# ԳԱՊ ՈՒՄ



## ՀԱՅ ՈՒՂՂԱՓԱՌ ԵԿԵՂԵՑՒՈՅ ԱՆՑՔԵՐԸ
## ՍԿԻԶԲԷՆ ՄԻՆՉԵՒ ՄԵՐ ՕՐԵՐԸ
## ՅԱՐԱԿԻՑ ԱԶԳԱՅԻՆ ՊԱՐԱԳԱՆԵՐՈՎ ՊԱՏՄՈՒԱԾ

ԳՐԵՑ

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ՕՐՄԱՆԵԱՆ

ՆԱԽԿԻՆ ՊԱՏՐԻԱՐՔ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ Վ. ԵՒ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ

1914

# ՄԱՍՆ Բ.

## 1221 ՏԱՐԻԷ ՄԻՆՉԵՒ 1808

ԿԱՄ

## ԿՈՍՏ. ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻԷ ՄԻՆՉԵՒ ԴԱՆ. ՍՈՒՐՄԱՌԵՑԻ

# Տ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Ա. ԲԱՐՁՐԲԵՐԴՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՆԱԽԸՆԹԱՑ**

**1101**. *Յովհաննէս կաթողիկոսի մեռնելով կաթողիկոսական աթոռը նախորոշ յաջորդ մը չունէր: Պահլաւունի եպիսկոպոսներուն վերջանալէն ետքը գոնէ Հեթումեանց տունին դարձած էր ընդհանուր մտադրութիւնը* (§ 1072), *բայց անկէ ալ պատրաստ եպիսկոպոս չկար, և բացէն մէկը ընտրելու պէտքը յայտնի էր: Ծանրութեան աչքը Գրիգոր Սկեւռացիին վրայ էր, իբր զի ոչ միայն արժանաւոր ձիրքեր ունէր, այլ և Լեւոն թագաւորի խոստովանութեան հայրն, կամ ուրիշ անունով արքունեաց ծխատէրն էր, և գոնէ թագաւորական տունին հետ յարաբերութիւն ունէր* (§ 1096): *Սակայն Ռուբինեանց տունը այլ եւս իր նշանակութիւնը չունէր, որչափ ալ Զապէլ աղջնակը Հայոց թագուհի կը կոչուէր, սակայն իշխանութիւնը Կոստանդին խնամակալին ձեռքն էր, որ իր երկու ընկերներուն Սիրադանի և Յովհաննէսի մեռնելէն ետքը, միահեծան խնամակալ և թագաւորութեան տէր մնացեր էր, և անոր կամքը կ'իշխէր այլ եւս: Կաթողիկոսական յաջորդութեան մէջ անոր հաճելի անձը պիտի նախադասուէր հարկաւ, և* միաբանեալք ամենայն իշխանաց և եպիսկոպոսացն ընտրեցաք յամենեցունց տէր Կոստանդին (ՄԻԽ. 516), *բնիկ Բարձրբերդցի. որ Մոլեւոնցի ալ կը կոչուի, հաւանաբար Մոլեւոնի գիւղացի կամ թէ Մոլեւոնի վանական ըլլալուն համար. հայրն ալ սակական անձ մը եղած էր Վահրամ անունով: Կոստանդին ուսմամբ և արժանեօք կրցած էր բարձրանալ եկեղեցական աստիճանին մէջ, և կը գտնուէր* եպիսկոպոս Մլիճոյ (ՄԻԽ. 516), *բայց որովհետև Մլիճ վանք մըն է և ոչ վիճակ, Պապեռոնի և Բարձրբերդի մօտերը, մենք հաւանական կը տեսնենք որ Կոստանդին միանգամայն Բարձրբերդի ալ եպիսկոպոս էր: Արդ Կոստանդին խնամակալ Պապեռոնեցւոց տոհմէն ու Բարձրբերդի իշխանն ու տէրն էր, ինչ որ մեզի կ'առաջնորդէ երկու Կոստանդիններուն յարաբերութիւնը ճշդելու և անոնց մտերմութիւնը հաստատելու, և իրարու բարեկամ և ձեռնտու գործակցութիւնը բացատրելու: Վարդան կը գրէ թէ Կոստանդին ընտրուեցաւ* ոչ յորէնէ և կամ ի պատուոյ, կամ ի մամոնայէ, այլ ի շնորհաց Հոգւոյն կոչեցեալ, և յամենայն լեզուաց վկայեալ (ՎԱՐ. 141), *որով կ'ուզէ ակնարկել, որ իր արժանաւորութեամբ բարձրացաւ, և ոչ իր ազգատոհմովը, ինչպէս իր նախորդները: Բայց մեր դիտողութիւնը նորէն կողմնակցական պաշտպանութեան դեր մը ունեցած ըլլալը կը ցուցնէ, որ սակայն արժանաւորութեանը չհակասեր, քանի որ ազգատոհմի առաւելութեամբ բարձրացող Պահլաւունիներն ալ անարժաններ չեղան երբեք: Տոհմային առաւելութեան բացակայութիւնը կը թելադրէ Կոստանդինը չատ երիտասարդ չկարծել ընտրուած միջոցին, և թէպէտ 46 տարի աթոռի վրայ մնաց, բայց տակաւին կրնանք 35'է 40 տարիք ընծայել իրեն 1221'ին, երբ հայրապետական աթոռ բարձրացաւ: Որովհետև Կոստանդին խնամակալին պաշտպանութիւնը ենթադրելով ալ, Կոստանդին կաթողիկոսին արժանիքը նուազած չենք ըլլար. կրնանք ընդունիլ, թէ իրաւցնէ այս ընտրութեամբ* եղև ուրախութիւն ամենեցուն յաղագս առաքինի և բարեբարոյ և խաղաղասէր մտացն, որով ամենեցուն հաճոյական լինէր (ՄԻԽ. 517), *զի վերջապէս լոկ անձնական ձիրքերովը զարդարուած և պատրաստուած անձ մը հայրապետական գահուն կը բարձրանար:*

**ՓԻԼԻՊՊՈՍԻ ԹԱԳԱՒՈՐԵԼԸ**

**1102**. *Գրեթէ երկու տարի էր որ Կիլիկեան Հայ թագաւորութիւնը առանց թագաւորի կը մնար, և մանկահասակ աղջկան մը թագուհիութիւնը արեւելեան ժողովուրդներու ճաշակին չէր պատասխաներ: Խնամակալն ալ որչափ խոհական և կարող, վերջապէս դժուարին կացութիւն ունէր, զի երեքներէն մինակ մնացած էր, և հարկաւ չատեր լաւ չէին տեսներ անոր միապետ դառնալը:*

Կոստանդին խնամակալ ինքն ալ զգաց այդ անպատեհութիւնները, և իրեն համամիտ օգնական ունենալով Նորընաիր Կոստանդին կաթողիկոսը, ուզեց կացութիւնը դարմանել։ Ժողովեալ զամեն եկեղեցականսն և զերսն, այսինքն զօրավարքն Հայոց և ասաց. Պարոնայք, դուք գիտէք թէ չէինք նեղութեան գոյ զաշխարհս, և զմեր պարոնին չետամեացն, այսինքն Լեւոնի ազգականները, — Աստուածով ինչս է չոյս բերել։ Կոստանդին իր գործունէութեան արդիւնաւորութիւնը կը հաչակէ որով անտերունջ երկիրը կառավարեց, ու կը յաւելու. Մեր պարոնին դուստրն կարգման եղաւ, ամենք Բագադէրոնեցիք որ մեզ պարոն բերեմք (ՍՄԲ. 120)։ Ամուսնանալու տարիքին հասած ըսուող աղջիկը Զապէլն էր, 1215'ին ծնած (§ 1088), որ հազիւ 7 տարեկան կրնար եղած ըլլալ, և անոր ընտրելիք փեսան ալ շատ մեծ չէր կրնար ըլլալ, հետեւաբար Կոստանդին ալ պիտի չկարենար բոլորովին խնամակալութենէ քաշուիլ, թէպէտ ինքը կը յայտարարէր թէ, ես ասեմ որ իմ տան և իմ որդւոյն անդորրութիւն առնեմ (ՍՄԲ. 121)։ Երբոր Կոստանդիններ այդ առաջարկը կը բերէին, հարկաւ փեսայացուին մասին պատրաստութիւններ ունէին, սակայն խորհրդակցութեան հրաւիրեալներ Բագադէրոնեցին շատ օրեր, և համամիտ գտնուեցան որ տան է չոյս տեղւոյ բերեն պարոն, ինչ որ կը յայտնէ թէ փոխադարձ նախանձը չներեց Հայ իշխանի մը անունին վրայ համաձայնիլ. և անշուշտ Կոստանդին այդ ատենէն կը փափաքէր իր զաւակներէն մէկը բարձրացնել Հայոց թագաւորութեան։ Խորհրդակցութիւնը վերջացաւ և Զապէլի փեսայութեան ընտրուեցաւ Անտիոքի դուքս Բոյեմոնդոսի երկրորդ որդին Փիլիպպոսը, երբ 18 տարեկան երիտասարդ մը։ Բոյեմոնդոսը նոյն ինքն Տրիպոլսեցին էր, Լեւոնի հակառակորդը և Ռուբէնի մրցակիցը, որ վերջապէս տիրացած էր Անտիոքի (1096), և զարմանալի պիտի երեւէր նոյնին որդին Հայոց թագաւորութեան կոչելնին, եթէ չգիտէինք, թէ Հայեր այս կերպով Լեւոնի հին գաղափարը կը շօշափէին, Կիլիկիոյ և Անտիոքի իշխանութիւնները միացնելով կամ մօտեցնելով իրենց դիրքը ամրացնել, և կ'ըսէին ալ թէ Անտիոք է մօտ է, և լաւ կարէ օգնել մեզ ի մեր ամեն կարէ։ Բանակցութիւնները աւարտեցան, և ամուսնութիւնը տեղի ունեցաւ 1222'ին (ՍՄԲ. 121)։ Փիլիպպոս հռոմէադաւան լատին էր, բայց Հայեր չուզեցին իրենց գահին վրայ օտարադաւան մը ունենալ. և բերեն պայման (ՍՄԲ. 154), որ Փիլիպպոս հայենոյ կենայր, ու զեկեղեցին ու զսեղանն հայենոյ պահէր, որ է ըսել հայադաւանութիւնը ընդունէր, և զամեն մարդ յէոր իրաւանցն պահէր (ՍՄԲ. 121), որով կ'ակնարկուի Հայերը չզրկել և Լատիններ առջեւ չքաշել։ Ամուսնութենէ հաքն ալ Կոստանդինի խնամակալութիւնը անմիջապէս դադրած պիտի չըլլայ, և ոչ ալ Փիլիպպոս նոյնհետայն աղիկամի գործեր կատարած պիտի ըլլայ, որովհետեւ անտեղի գործերը սկսան երբ մեծցաւ և եղև տան տէրայ (ՍՄԲ. 121), որով չափահասութեան տարիքը հասնելէն ետքը աղիկամի գործերու սկսած ըլլալը կը հաստատուի։

**1103.** Երբ այդ կարգադրութիւնք կը կատարուէին արեւմտեան գաւառներու մէջ, անհնարին տագնապ մը վերիվայր կ'ընէր արեւելեան երկիրները, զի Ասիոյ միջնաշխարհին Թաթարները, որ Մոնղոլ և Թուրք ալ կը կոչուին, դէպ արեւմուտք սկսեր էին արշաւել։

**ԹԱԹԱՐՆԵՐ ԵՒ ՎԿԱՆԵՐ**

Իրենց նախկին պատմութիւնը ոչ պայծառ է, և ոչ մեր նարատակին մէջ կը մտնէ։ Ընդհանրապէս կ'ընդունուի թէ եօթն ժողովուրդներ կամ ազգութիւններ էին (ՀԵԹ. 31), երբ անոնցմէ մէկուն պետը Թէմուճին, որ Ճէնկիզ կոչուեցաւ, և Չէնկիզ կամ Ջանկզ կամ Կոնգիոս ալ կը գրուի, միւսներուն վրայ զօրացաւ, և ամէնքն ալ զայն իրենց գլուխ ճանչցան (ՀԵԹ. 32), և անոր հրամանին ներքեւ ամէն կողմ յարձակեցան, և գլխաւորապէս Պարսից կողմերը, և բոլոր անոնց հպատակ երկիրները աւերեցին, և Մահմէտ Ճէլալէտտին սուլտանը վռնտեցին, թէպէտեւ ան կրցաւ նորէն դառնալ, երբ Թաթար ասպատակը քաշուեցաւ։ Այս եղելութիւնք տեղի ունեցան 1176էն մինչ 1226 տարիներու միջոցին։ Թաթար ասպատակին մէկ թեւն ալ շուրջ 1220'ին Սապատա կամ Սուպութա զօրավարին առաջնորդութեամբ Կովկասներէն անցնելով Վրաց թագաւորութեան վրայ ինկաւ, և աւերած-

*ները սկսան, Գէորգ Լաշա թագաւոր և Իւանէ Օրբելեան սպարապետ, չկրցան անոնց դիմադրել, և նոյն իսկ Խաչէնի Հայ իշխան Գրիգոր Հաղբակեան գերի ինկաւ, և անոր եղբօր Վասակի որդին Պապաք իշխան պատերազմին մէջ մեռաւ, և Մկդեմ ու Հասան՝ Վասակի միւս որդիներ հազիւ ազատեցան* (ԿԻՐ. 105)։ *Զայն նկած էր թէ Թաթարները քրիստոնեայ են և իսլամներուն դէմ կու գան, որով մինչեւ իսկ խաչով ու թափօրով զիրենք դիմաւորողներ ալ գտնուեցան* (ԿԻՐ. 103), *և իրօք ալ քրիստոնէութեան Թաթարներուն մէջ կանուխէն մտած ըլլալը պատմողներ կան* (ՁԱՄ. Գ. 197)։ *Սակայն Ճինկիզի արշաւանքը յայտնապէս քրիստոնէութեան ալ դէմ էր, ուստի խաչով դիմաւորողներն ալ կոտորուեցան, և քրիստոնէական սրբութիւններ պղծուեցան* (ԿԻՐ. 103), *և քրիստոնեայ գերիներ ուրացութեան ստիպուելով կը նեղուէին* զանազան պանջանօք, քաղցիւ և ծարաւով և մերկութեամբ (ԿԻՐ. 105)։ *Աւելի խստութիւն բանեցուցին Գրիգոր իշխանի վրայ, զոր* նեղեցին բազում խոշտանգանօք, քարշեցին զնա ի վերայ երկրի, և քաղքանդեցին զամենայն մարմին, մինչև ի տանջելն նոցա աւանդեաց զհոգին, և ընկալաւ ի Քրիստոսէ զվկայական պսակն (ԿԻՐ. 105)։ *Ժամանակակից է համանուն մարտիրոս մըն ալ, Գրիգոր Կեչյարեցի, որուն գերեզմանը* 1222 *թուականը կը կրէ* (ՆՈՐ. 95)։ *Իսկ Իւանէի և Վրաց յաղթութիւնը իբր աստուածային պատիժ կը մեկնուի, որովհետեւ անարգած էին Պարկեշտ Բջնեցի սրբակրօն Հայ քահանային գերեզմանը, զոր անդուցիք իբր ուխտատեղի կը պատուէին, իսկ Իւանէի կինը յանդգնութեան մոլեռանդութեամբ Պարկեշտին ոսկրները հանել ու այրել տուած էր, և հրամայած* շուն զենուլ ի տեղւոջն (ՎԱՐ. 143)։ *Երբ Թաթարներ կը քաշուէին, պահ մը Իւանէ հետապնդեցաւ անոնց ետեւէն, բայց անոնք նորէն դարձան և իրենց աւերածները շարունակեցին, և այսպէս Հայաստան բովանդակ ասպատակի եղաւ, մի մասը Վրաց և միւս մասը Պարսից ձեռքը գտնուելով, և երկկողմանի արշաւանքներուն չարաչար հետեւանքները կրեց*։

**1104**. *Արեւմտեան գաւառներ տակաւին Թաթարներու արշաւանքէն ազատ էին, բայց հանդարտ չէր իրենց ներքին վիճակը։ Փիլիպպոս Բոյեմոնդեան զաւակն էր, և շատ դիւրահաւան միտք մը ունեցած էր անոր ձեռքով Հայոց շահերը պաշտպանել։*

**ՓԻԼԻՊՊՈՍ ԳԱՀԱԶՈՒՐԿ**

*Հազիւ թէ Փիլիպպոս քսան տարեկան կ՚ըլլար, և իրաւունք կը զգար ինքն իրեն պետական գործերը վարել, չափով դուրս կու տար իր ներքին զգացումը,* զի ատելի էր նմա ազգս Հայոց, և երդմնազանց եղեալ ի յերդեալ ուխտէն՝ որ էր հայադաւան և հայասէր լինել (ՎԱՐ. 141), *լատին և հռոմէադաւան սովորութիւնները կը պահէր, և Հայ իշխանները* ծաղր առնէր (ՍԱՄ. 148) *լատինամիտ երդիծանօք, և* իւր հօրն Բոհեմոնդի, կ՚առաքէր որ յղէր զգանձս Հայոց զամէն իշխանաց, և յիւրոցն տանէր (ՍՄԲ. 121)։ *Նոյն իսկ Լեւոնէ հիւսուած* զթագաւորական թագն (ՎԱՐ. 141) *և* զզարդարն արքունական, զոր յերեւելի աթոռս կանգնէին, *և զոր յարմար է մեծ հանդէսներու օրով գործածուելիք արքունական վրան իմանալ, և* այլ գանձս ոսկւոյ և արծաթոյ (ԿԻՐ. 141), առաքէր ի տուն հօր իւրոյ *Անտիոք քաղաքը։ Այդ կերպով կը յառաջէր* այնչափ, *որ Հայ իշխաններ* չկարացին ժուժել իրերան (ՍՄԲ. 121), *և երբոր իմացան որ գաղտնի ետեւէն ինքն ալ գնայր* յԱնտիոք, *և* առնէր ընդ իւր և զԶագէլ Բոհեմոնդին, *ետեւէն հասան և* ըմբռնեցին զԲոհեմոնդեանն Փիլիպ յայնկոյս գետոյն Ջահանայ, *որ է ըսել Համսուն գաւառին մէջ, և անմիջապէս* կողպեալ զնա եդին ի զընտան (ՍԱՄ. 149), *նոյն իսկ* ի Թիլն Համտնոյ, *և* յատենայն յղեցին (ՍՄԲ. 121)։ *Ըստ այս թագաւորական գահը նորէն դատարկ հռչակուեցաւ, և նորոգուեցաւ Կոստանդինի խնամակալական պաշտօնը, Զապէլ թագուհիին անունին ներքեւ, որ դեռ ութը տարեկան էր։ Փիլիպի բանտարկութեան պայմանաժամ նշանակուեցաւ* մինչև բերցեն զթագն և զգանձն զոր տարաւ, *և կը յուսացուէր որ հայրը աւածները դարձնէր որդւոյն ազատութեան համար, սակայն նա* ոչ ետ և ոչ զնա, այլ և ոչ օգնել կարաց որդւոյ իւրում, *ուստի խնամակալն և իշխաններ* թողին զնա անդ *Թիլի բանտին մէջ,* մինչև ի նմին մեռաւ (ՎԱՐ. 94)։ *Ճշդուած չէ թէ որչափ ապրեցաւ Փիլիպպոս բանտին մէջ, սակայն գիտենք որ Կոստանդինի խնամակալութիւնը երեք տարի շարունակեց, և միայն* 1226*ին*

*սկսան խորհիլ Զապէլի երկրորդ ամուսնութեան մասին, յարմարագոյն կ'ըլլայ ըսել, թէ երկու տարի և աւելի ալ մնացած ըլլայ նա Թիլի զղջատանին մէջ, և բանտարգելութեան մէջ մնացած, քանի որ հայրը նախադասեց Հայոց արքունիքին թագն ու գանձերը խլրացնել, քան թէ որդւոյն կեանքը ազատել։ Բնական էր որ Փիլիպպոսի ընթացքը Հայերը զայրացնէր Լատիններուն դէմ, հետեւաբար կրկին նորոգեցին Լեւոնի օրով Լատիններուն դէմ բացուած հալածանքը* (§ 1090), *ամէնքը Կիլիկիայէ հեռացուցին, նոյն իսկ վտարեցին Տարսոնի և Մամեստիոյ լատին եպիսկոպոսները, որոնք Լեւոնի օրէն դրուած էին։ Ասոնց դարձին համար Հոնորիոս Գ պապը, ուղղակի Կոստանդին կաթողիկոսին դիմեց, և 1223 դեկտեմբեր 17 թուակիր գրութեամբ Երուսաղէմի լատին պատրիարքին ալ գրեց, նոյն նպատակին համար աշխատելու* (ՍԻՍ.528)։

**1105.** *Փիլիպպոսի գահընկէցութենէն ետքը Հայոց նոր թագաւոր մը տալու խնդիրը՝ Զապէլի նոր ամուսին մը տալն էր, որով հարկ եղաւ սպասել մինչեւ որ անուանական թագուհին*

ՀԵԹՈՒՄԻ
ԹԱԳԱՒՈՐԵԼԸ

*այրիանայ, ինչ որ վերջապէս տեղի ունեցաւ Փիլիպպոսի մեռնելով բանտարգելութեան հետեւանքով, եթէ չուզենք անուղղակի միջոցներու կիրառութիւն ենթադրել, ինչ որ այն դարերուն մէջ սովորական միջոց մըն էր։ Կոստանդին որ թագաւորութիւնը իր ձեռքն առած էր, կ'ուզէր զայն իր տոհմին պահել, բայց քանի որ Զապէլ թագաւորութեան տէր հռչակուած էր, հնար չէր որ իրեն թագաւոր հռչակուելուն կերպը գտնէր, ուստի պարտաւորեցաւ այդ անունը իր զաւակներուն մէկուն վրայ անցընել։ Ռուբինեանց չառաւիղէն արական սերունդին Ռուբէն-Ռեմոնդով վերջանալէն ետքը* (§ 1097), *ինքն Կոստանդին միրձաւոր ժառանգ կրնար սեպուիլ Լեւոնին մօրեղբօրորդին ըլլալով* (§ 1096)։ *Կոստանդին խնամակալ պատեհը հասած կարծեց իր միտքը իրագործելու, և նախապէս հաւանեցոյց զԼամբրոնեցին, որ հարկաւ պիտի օգնէր բարեկամին, որ իր բարձրանալուն օգնած էր, և երկուքը խրատ մտերիմ էին։ Երկու Կոստանդիններ հաւանեցուցին զայր ոմն ի մեծամեծացն* (ԿԻՐ. 95), *որոնք փորձով տեսած էին օտարազգիի երեսէն յառաջ եկած վատ հետեւանքները։ Կոստանդինի զաւակները բազմաթիւ էին, բայց ընտրութիւնը պզտիկին վրայ կայացաւ, հաւանաբար Զապէլի հետ տարիքի համաձայնութիւնն ալ նկատի առնելով։ Այսպէս Զապէլի փեսացու և Հայոց թագաւորացու հռչակուեցաւ Հեթում, հազիւ երկու տարի հարսնցուէն մեծ, որ* 11 *տարեկան եղած էր, և անոր հետ վեցերորդ աստիճանի ազգակից։ Հեթում նկարագրուած է իբրեւ մեծահոգի և հանճարեղ պատանեակ, անձնեայ և բերկրեղ, և գեղեցկադիտակ երեսօք* (ՎԱՐ. 141), *մանուկ տիօք, բայց առոյգ մարմնով և գեղեցիկ տեսանելով* (ԿԻՐ. 95)։ *Պսակադրութեան և թագադրութեան կրկնակ հանդէսները փառաւորապէս կատարուեցան Տարսոնի մէջ, ուր ժողովեցան տէր Կոստանդին կաթողիկոս և եպիսկոպոսք և իշխանք,* 1226 *թուականին* (ՍՄԲ. 121), *Հոգեգալստեան տօնին* (ՍԻՍ. 528), *որ այն տարի կ'իյնար յունիս 7'ին։ Կոստանդին կաթողիկոս անձամբ հանդիսադիր եղաւ բարեգուշակ արարողութեան, որ եղեւ արքայանիստ Հայոց* (ՍՄԲ. 121), *զի վերջապէս թագաւորական ազգատոհմին կանոնաւոր ձեւ մը կը տրուէր, այն ալ ազգային շրջանակի մէջ, և պահելով միշտ Կոստանդին խնամակալին պետական գործունէութիւնը, որ երբ խնամակալ ըլլալէ կը դադարէր, թագաւորահայր կը դառնար, և իր որդւոյն ու հարսին հովանաւորն ու առաջնորդը կը մնար։ Իսկ հանդէսին Տարսոնի և ոչ Սիսի մէջ կատարուիլը, հետեւանք պիտի ըլլայ համախմբութեանց յարմարագոյն կեդրոն մը ըլլալուն, թող որ, եթէ ոչ պաշտօնական գոնէ բարոյական և նախնական մայրաքաղաք էր Տարսոն՝ Կիլիկիոյ համար։*

**1106.** *Հեթումի թագաւորութեամբը նոր դիրք մը կը ստեղծուէր Սիսի արքունիքին մէջ, ուր յանկարծ*

ԱՌԱՋԻՆ
ՋԱՆՔԵՐ

*բազմաթիւ արքայազուններ եւ եւս կու գային, որք իրենց աստիճանին համեմատ դիրքեր ալ պիտի ունենային։ Կոստանդինի զաւակներէն Սմբատ սպարապետ անուանեցաւ, Գունդստաբլ պաշտ-*

*ուանունով, որ է նոյն ինքն Սմբատ պատմիչը։ Բարսեղ՝ որ եկեղեցականութեան մըտած էր, Դրազարկի առաջնորդ և Սիսի արքեպիսկոպոս եղաւ։ Լեւոն՝ իշխանաց իշխան կամ «պարոնաց պարոն» պատուանունով արքունեաց հազարապետ նշանակուեցաւ։ Եւ Օշին՝ «պայլ» պատուանունով Կոռիկոսի իշխան և տէր եղաւ։ Ուրիշ ալ աւելի պզտիկ զաւակներ ալ ունեցած է Կոստանդին, որոնք ժամանակին պատշաճաւոր պաշտօններ ունեցան։ Իսկ ինքն Կոստանդին իբրեւ թագաւորահայր, «զամենայն հոգս արքայութեան յանձն առեալ խնամատարաբար կարգաւորէր», և ընդհանուր համաձայնութիւն հաստատելու կ'աշխատէր, «զխեռն հնազանդեր ածելով», և եթէ սիրով համաձայնութեան չեկողներ ըլլային՝ «զոր հնազանդոյն թաթառայր է մեզ, զնոսա թշնամական առնելով, և զայլս մեծարանօք» (ԿԻՐ·95), որով ի հարկին խստութիւնն ալ ձեռք առնել չէր քաշուեր։ Եկեղեցական դասակարգին համակրութիւնն ալ շահելու համար, «զամենայն վանորայս երկրին անհոգ առնէր յամենայն հարկական պիտոյից, և ինքն տայր նոցա զհարկաւոր պէտս նոցա», որպէս զի նոքա միայն աղօթից և պաշտաման պարապեսցին (ԿԻՐ·95), զանց չընելով հարկաւ ուսումնական աշխատութիւնները, որոնք այդ միջոցին ալ ծաղկեալ վիճակ ունեցան, ինչպէս ունէին նախորդ կաթողիկոսներուն օրով։ Կոստանդին թագաւորահօր օրով Կիլիկիոյ հայրենակութիւնն ալ երթալով շատցաւ, և «յայս երկիրն բազմութեամբ մարդկան՝ անօրէնութեանց և արտաքսեալք», որոնք Հայաստանի ներքին գաւառներէն դէպ Արեւմուտք խուժեցին, «փախուցեալք յերեսանէ Թաթարին» (ԿԻՐ·95)։ Աշխատեցաւ սիրալիր յարաբերութիւններ հաստատել Իկոնիոնի դրացի սուլտանին հետ, որ այն ատեն Ալաէտտին Քէյքուպատն էր, 1219'ին գահ բարձրացած։ Հայոց թագաւորութեան նախահաստատ ձեւին համեմատ (§ 1055), նոր թագաւորը պէտք էր իր յարգանքները ընծայէր հռոմէական գերիշխանութեան, և Կոստանդին զանց չըրաւ զայն կատարել, և «եդին մեծ սէր ընդ Հռոմայ պապն և ընդ Ալամանաց կայսերն» (ՍՄԲ·121)։ Կը յիշուի գիր մըն ալ 1226 յուլիս 29'ին գրուած, որով Հոնորիոս Գ կղկին կը գանձնոյ յատին եպիսկոպոսներու վատրման վըրայ, և անոնց անկերնին զանոնք կը խընդ-*

*րէ Կոստանդին թագաւորահօրէն (ՍԻՍ·553)։ Մէկ խօսքով Կոստանդին թագաւորահայր մանուկ թագաւորին առաջնորդելով, Կիլիկիոյ մէջ բարեկեցիկ և խաղաղական կացութիւն մը կը ջանար հաստատել, և գոհունացընելի կերպով ալ կը յաջողէր։*

**1107.** *Ընտանեկան միջադէպ մը՝ պահ մը խանգարեց միաքերու հանդարտութիւնը,*

ԶԱՊԷԼԻ ԸՆԹԱՑՔԸ

*և զբաղեցուց Կոստանդին թագաւորահայրն ալ։ Զապէլ արդէն 12 տարեկան եղած, բայց տարիքին պահանջէն աւելի ընտանեկան և քաղաքական գործերու փորձառու դարձած, սկսաւ դժգոհութիւն յայտնել Հեթումի կենակցութենէն։ Ըսենք որ նախնական զգացումով ալ սրտով յարում մը կապած էր Փիլիպպոսին, ըսենք որ խառված էր բանի կերպով անկէ բաժնուելէն, կամ թէ վշտացած էր անոր տառապագին վախճանին վրայ, ըսենք ալ թէ պատմիչին ակնարկածին համեմատ «մայր նորա Ֆռանկ էր ազգաւ» (ԿԻՐ·95), կամ թէ Սիպիլ Լուսինեան (§ 1088) Լատինաց հակամէտ և Հայերուն հակակիր զգացումներ կը թելադրէր իր աղջկան՝ քանի որ Լատիններուն շահերը վնասուած կը տեսնէր, վերջապէս ինչ ալ ըլլայ պատճառը, Զապէլ եղանակը գտաւ և յանկարծ արքունիքը թողլով, ու մայրը տեսնելու պատրուակով Իսաւրիոյ Սելեւկիա քաղաքը գնաց, ուր կը գտնուէր Սիպիլ այն միջոցին, իսկ Սելեւկիա՝ Հիւրընկալ լատին ասպետներուն իշխանութեան ներքեւ կը գտնուէր։ Սմբատ ալ Զապէլի հեռանալուն պատճառը կը հասկցնէ ըսելով, «թէ չարչեցաւ դէմական թագաւորեան է Ռոպէնին Զապէլ, և խռովեցաւ ընդ Ռոպէնեանն և ընդ ամեն Հայս» (ԿԻՐ·121)։ Կիրակոս եղելութիւնը չփոթ կերպով մը կը յիշէ, «թէ Ռոպէանն ոչ հասանէր մինչ կին մանկան Հեթումի» (ԿԻՐ·95), ասկից սմանք հետեւցուցին իրր թէ Զապէլի ամուսնութենէ առաջ անկի ունեցած ըլլայ Սելեւկիա փախչիլը (ՋԱՄ·Գ·194). սակայն Սմբատ, որ Զապէլի տագրն ալ է, շատ յըստակ կերպով կը շեշտէ ամուսնութենէ ետքը հեռացած ըլլալը։ Աղաղական բանակցութիւններ արդիւնք չունեցան, մայրը չուզեց աղջիկը դրկել, ասպետներ ալ չքմեղանքներ յառաջ բերին թէ չեն կրնար բռնադատել,*

և իրենց ապաստանած մէկը իւր կամքին հակառակ յանձնել։ Պարոն Կոստանդին պարտաւորուեցաւ բանի միջոցներու դիմել, ծովեց հեծեալ և գնաց էջաւ առաջի Սելջուկեայ։ Ասպետներ, որ բերդը Լեւոնէն պարգեւ ստացած էին, և զայն պահպանելու համար կոչեցին ի յԱլաւոյն սուլտանէն, և Հայոց պաշտպանութեան պէտք ունէին, թէ՛ Զապէլը յանձնած և թէ՛ Հայոց ընդդիմացած չըլլալու համար, առաջարկեցին որ իրենք բերդէն ելնեն, և Կոստանդին ինքն մանէ ու առնէ զբերդն ու զկինն, և իրօք ալ Հայեր այս կերպով առին զՍելջուկն և զԲաքրահէն (ՍՄԲ. 122)։ Բայց երբ Հայեր մեկնեցան, Հիւրընկալ ասպետներ նորէն իրենց բերդը մտան և իրր թէ այս կերպով ապաստանի իրաւունքը ոտնակոխ ըրած չեղան։ Չենք գիտեր թէ Կոստանդին կաթողիկոս ինչ դեր վարեց Զապէլի հանդէպ, որ եկեղեցականապէս ամուսնութեան, և քաղաքականապէս թագաւորութեան համար վտանգաւոր միջադէպ մը կը ստեղծէր։ Կը սիրենք ենթադրել որ իւր հայրական և հայրապետական խրատներ ազդեցին վերջապէս Զապէլի վրայ, որ այնուհետեւ օրինակելի ամուսնոյ տիպար մը եղաւ, և ընտանեկան երջանկութեան հեղինակ եղաւ Հայոց արքունիքին, և հետզհետէ երեք մանչ, Լեւոն և Թորոս և Ռուբէն, և հինգ աղջիկ՝ Իզապէլ, Մարիամ, Ռիթա, Սիպիլ և Ֆիմի, զաւակներ տուաւ Հեթումի (ՎԱՀ. 219), որոց առաջինը, թագաժառանգ Լեւոնը, ծնաւ 1236ին, Զապէլի 20 տարեկան ըլլալէն ետքը։

**1108.** Զապէլի նկարագիրը բարեպաշտ և բարեգործ և բարեսէր կնոջ տիպարը կը կազմէ անկասկած, և պատմութիւնն ալ մեզ զայն ոչ միայն սրբակեաց, այլ և կատարելապէս սուրբ անձի մը պէս կը ներկայացնէ, չդադրելով պատմելով անոր գթասիրտ բարութիւնը, կարօտներու և հիւանդներու ցուցուցած խնամքը, և անբասիր և անբիծ կեանքը։ Սակայն առանց կատարեալ հաստատելու մէջ իւր գործին տէր եղող կնոջ մը ձիրքերն եղան, որոնք չեն եղծուիր առանձնակոյ աղջկան մը թեթեւութիւններով։ Ոմանք Զապէլի անունին առուերած չըլլալու միաքով ենթադրեցին թէ երբ Հեթումի կենակցութենէն կը խուսափէր, խորհէր կրօնաւորել ի վանս Կաստանոյ (ՉԱՄ. Գ. 194), որ հինէրէն պատմուած չէ, և եթէ այս եղած ըլլար պատճառը, հարկաւ Սմբատ պիտի չկարենար գրել թէ շարժեցաւ դէպ ի Բարձրաբերդն ի Բաղդադն Զապէլ (ՍՄԲ. 121), և առանձնական անուանել կրօնաւորելու նպատակը, քանի որ յայտնի են Սմբատի ալ բարեպաշտական զգացումները։ Պատմութեան ընթացքին մէջ այլեւս Զապէլի պետական կամ ազգային գործունէութենէն յիշատակ չունինք. մինչ անոր մանկութիւնը սերտ կերպով կապուած տեսանք քաղաքական գործողութեանց հետ։ Իւր անունը հռչակաւոր ընողը Սիսի հիւանդանոցն է, զոր ոչ միայն ինքն կառուցանել տուաւ, ինչպէս արձանագրութիւնը կը վկայէ (ՍԻՍ. 539), այլ և անոր հոգաբարձուն և մատակարարը եղաւ, արքունական միջոցներով զայն պահպանեց ու հարստացուց, և ինքն անձամբ անոր մէջ աշխատեցաւ, ու իբր հասարակ հիւանդապահ կին մը ախտացելոց ծառայութիւնները կատարեց, զաւարթատես ողորմութեան և գթասիրտ առաքինութեան օրինակը տալով ամենուն, մինչեւ իւր կեանքին վերջը, որ երկար չեղաւ, զի 37 տարեկան վախճանեցաւ 1252ին, և Յայսմաւուրքը սրբուհւոյ յիշատակի պէս կ՚արձանագրէ անոր անունը յունուար 22ին (ՅԱՍ. Ա. 42)։ Կոստանդին կաթողիկոս գլուխ կանգնեցաւ փառաւոր յուղարկաւորութեան, որ տեղի ունեցաւ ընդհանուր սուգի արտայայտութեանց մէջ, և մարմինը ամփոփուեցաւ Դրազարկի վանքը, Ռուբինեանց հարստութեան արքայազուններուն գերեզմանատեղին։ Չէ յիշուած հիւանդութեան անունը, որ այսպէս վաղաժամ կը խլէր ամենուն սիրելի անձ մը իրեններուն գիրկէն, և աւելորդ կը սեպենք մակաբերութեանց մէջ ընկղմիլ։ Ուզեցինք այստեղ վերջացնել Զապէլի մասին ըսելիքը, պատմութիւնը ընդհատելով չվերադառնալու համար։

**1109.** Հեթումի թագաւորութեան և Կոստանդինի կաթողիկոսութեան առաջին ժամանակները ընդհանրապէս խաղաղութեան միջոց մը կրնան նկատուիլ, հետեւանք այն հռչակաւոր յաղթութեանց զորս Կոստան-

դին թագաւորահայր ջանաց հաստատել բոլոր պետութեանց հետ։ Մինչեւ իսկ ռմանք

ԼԱՄԲՐՈՆԱՑԻՈՑ ԽԼՐՏՈՒՄԸ

Պաղտատի ամիրապետ Տահերի կամ Թահիրի հետ դաշնադրութեան՝ և Հեթումի ամիրապետին երթալուն խօսքը կ'ընեն (ՍԻՍ. 553), սակայն ոչ պատմական պարագաներ այդ յարաբերութիւնը կ'արդարացնեն, և ոչ Հեթում 1226 թուականին այդպիսի ծանր և հեռաւոր գործառնութեանց ձեռնարկելու յարմարութիւնն ու տարիքն ունէր։ Հանդարտութիւնը կը նպաստէր ներքին գործերու զարկ տալ, ինչպէս էին Սիսի Ս. Սոփիա եկեղեցւոյն շինութիւնը, Սիսի և Տարսոնի պարիսպներուն նորոգութիւնը, առեւտրական յարաբերութեանց զարգացումը, Եւրոպացւոց՝ և յատկապէս Գենուացւոց և Վենետկեցւոց հետ վաճառականական դաշնադրութիւնները և յատուկ շնորհումները, և տնտեսական կարգերուն նպաստաւոր բարեկամութիւնը ու մասնաւոր պարգեւները։ Եթէ քիչ մը շփոթութիւններ ծագեցան, անոնք ալ տեղի ունեցան՝ Լամբրոնի իշխան Կոստանդինի երեսէն, որ Հեթում-Հեղիի որդին էր և թագաւորահօր աներձագը։ Թագաւորահայրը ուզած էր իւր դիրքը զօրացնել, և որպէս զի յաջողի Լամբրոնացին ալ Լեւոնի օգնականութեան իւր առնել, տուած էր անոր զԼամբրոնն, զսեփական իւրեանց, զոր Լեւոն թագաւոր գրաւած էր, և նորէն չվերադարձնելը պայմանադրած (§ 1069)։ Այլ և իւր աներձագին գերագոյն պատիւ մըն ալ շնորհած էր, ընկլով զայն [illegible] որդւոյ իւրոյ Հեթումի։ Բայց կարծես թէ ըմբոստութիւնը ժառանգական էր Լամբրոնացւոց տոհմին, և այդչափ բարիքներէն նոքն ալ Կոստանդին Լամբրոնացին ըստ հայրենի սովորութեան իւրեանց, ինչպէս յատկապէս կը շեշտէ պատմիչը, ապստամբեաց ի թագաւորութենէ իւրոյ յորդւոյ Հեթմոյ. և Հայոց թագաւորութեան դէմ յենան եղ ի սուլտանն Հոռոմոց կամ Իկոնիոնի։ Ծանօթ էր որ [illegible] (ԿԻՐ. 157), թագաւորն ու թագաւորահայրը չկարենային սէր և խաղաղութիւնք ցուցնել անոր, խել սա իբր անխրատ մինչեւ պապին բողոքներ կը սկսէր բարձրացնել, որով Գրիգոր Թ, որ 1227'ին Հոնորիոս Գ'ի յաջորդած էր, 1237 յունուար 19'ին, Հայոց թագաւորին և անոր հօրը գրելով կը յանձնարարէր Կոստանդին Լամբրոնացին չնեղել, որ ինքզինքը ըստ ամենայնի Հռոմի հնազանդ կը ձեւացնէր (ՍԻՍ. 554)։

**1110.** Նոր խաչակրութիւն մը, որ է վեցերորդը, Ասորիք եկած էր 1228'ին, Գրիգոր Թ պապին յորդորանօք և Փրեդերիկոս Բ Գերմանիոյ կայսեր առաջնորդութեամբ։

ԱԹՈՌԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Մէլիք-էլ-Քեամիլ, որ է Մելետին, Եգիպտոսի սուլտանը, անոր օգնականութեան դիմեց իւր եղբայրներուն ապստամբութիւնը զսպելու, բայց վերջէն պարտաւորուեցաւ կայսեր ձեռքէն ազատելու համար՝ Երուսաղէմը անոր յանձնել, որ 1229'էն նորէն քրիստոնէից իշխանութեան ներքեւ անցաւ առանց պատերազմի, և 12 տարի մնաց, մինչեւ որ 1241'ին նորէն Եգիպտացիներէն գրաւուեցաւ Մելիք-էլ-Սալէհ սուլտանին ձեռքով։ Քրիստոնէից տիրապետութեան պարագայէն օգտուելով Կոստանդին կաթողիկոս փափաքեցաւ ուխտի այցելութիւն մը ընել Երուսաղէմ, զոր և կատարեց 1238'ին, Ասորւոց կաթողիկոսին ընկերակցութեամբ (ՍԻՍ. 554), ինչ որ առիթ ընծայեց Լատինաց հետ բարեկամական յարաբերութիւնները յաճախելու։ Այդ պարագային, և Երուսաղէմի գրաւումով Լատիններուն խրոխտանքին աւելնալը, նորէն քաջալերեցին Անտիոքի Լատին պատրիարքներուն յաւակնութիւնը Հայոց կաթողիկոսութեան վրայ, պահանջելով որ անոր կայ իրենց հպատակի, քանի որ Բովանդակ ազգն Հայոց բնակէր ի ձեռն պատրիարքութեան Նորա, կամ լատիններէնին աւելի հաւատարիմ թարգմանութեամբ, Բովանդակ Հայաստան պարտաւորեալ էր ի պատրիարքութեան Անտիոքայ (ԿԱԼ. 374)։ Աւելորդ հին պահանջ մըն էր՝ Կիլիկիոյ գաւառներուն Անտիոքայ աթոռին հպատակ մետրապոլտութիւններ ըլլալէն, յունական նուիրապետութեան համեմատ։ Անտիոքի պատրիարքին բողոքը կանոնական և իրաւացի գտնուեցաւ Գրիգոր Թ պապէն, [illegible] պատրիարքութեան, ուստի 1238 յունիս 26'ին գրութեամբ պաշտօն յանձնեց երկու եպիս-

կամօքն քո և բերանով խոստովանեալ զհնազանդութեամբ ձեր հաստատիցէ, զի ըստ դարուն իւրեանց խոստովանութեամբ Հռովմէական եկեղեցւոյ Անտիոքայ պատրիարքին (ԿԱԼ. 374), որով Հայոց հայրապետութիւնը մետրապոլտութեան իջած պիտի ըլլար։ Եպիսկոպոսներուն եկած ըլլալը և ինչ խօսած ըլլալը չենք գիտեր, միայն Գրիգորի նամակներուն մէջ կը գտնուի 1239 մարտ 1'ին գրուած ուրիշ գիր մը, որով կը գիջանի թագաւորին և թագուհիին միջնորդութեան, և կը հաստատէ զայդպիսի հաստատեալ սովորութիւնն, զորս ներկայած են Հայերը իրենց պաշտպանութեան համար։ Նոյն գիրով կ'ընդունի թէ այսպիսի սովորութիւնները են պահել անշարժաբար և տանել մինչև ի ժամանակս սրբոյ նախնոյն մերոյ Սեղբեստրոսի պապին, և սրբոյն Գրիգորի՝ ժամանակէն նորա և Հայաստանեայց հայրապետին (ԿԱԼ. 375)։ Այդ վերջին ակնարկը ուղղակի մեզ կը տանի հաշտակարուր Դաշանց Թուղթին ծագումին, և իբր փաստ կը ծառայէ անոր յօրինուածին ժամանակն ու նպատակը ճշդելու (§ 176)։ Կոստանդին կաթողիկոս, Հեթում թագաւոր և Կոստանդին թագաւորահայր, որչափ ալ իրենց ազգը սիրող ու եկեղեցին պաշտպանող, սակայն չունէին այն կորովը զոր պատշաճ պարագաներուն ցուցուցին Յովհաննէս կաթողիկոս և Լևոն թագաւոր, ուստի Հայկական եկեղեցին Անտիոքի իրաւասութենէ ազատ պահելու համար ուզեցին օգտուիլ այն անորոշ ուանդութենէն, որով Լուսաւորչին Հռոմ գացած ըլլալը կը պատմուէր, և այս հիմամբ կազմեցին պապական շնորհման մը պաշտօնագիրը, առանց զգուշանալու իսկ որ գոնէ հին լեզուի ոճը պահէին, և չգործածէին լեզու մը, որ կատարելապէս Սմբատ պատմագիրին ոճիօրէնը կը չօչափէ։ Այդ առթիւ Անտիոքի պատրիարքէն ալ բարձր դիրք մը գրաւելու համար, ոչ միայն գրեցին թէ Հայոց կաթողիկոսներ կանոնք նիկիական եղեցին, այլ և թէ պատրիարքն երեքին, Երուսաղէմ և Անտիոքայ և Աղեքսանդրիոյ, յորժամ պատրիարք լինէին, կամաւ և ընտրութեամբ Հայոց հայրապետին լիցի (ԴԱՇ. 25)։ Պէտք է ըսել, որ եթէ Կոստանդիններ կորով ունեցած չեն բացէն դիմադրելու, ճարտար եղած են Հռոմի ոգին ճանչնալու, որ մինչ դիւրահաւան եղած է իրեն անձնասիրութիւնը փայփայող բացբացաներու հաւատալու։

1111. Գրիգոր Թ. պապը, այնչափ գոհ մնացած է որ Հայեր Հռոմի շնորհման փաստով կը պաշտպանեն իրենց եկեղեցւոյն անկախութիւնը, և զինքն ալ

ՑՈՅՆԵՐՈՒ ՀԵՏ

կ'ազատեն անեկանելի և դժուարին պարագայէ մը, յոր բռնուած էր Անտիոքի Լատին պատրիարքին անխորհուրդ յաւակնութեամբ, որ Հայոց առաջարկը ընդունելէն զատ, Կոստանդին կաթողիկոսին նուէր կը ղրկէր պալիում կոչուած լաթին եմիփորոնը, խոյր, ուրար ու մատանի որ է նշան իւր առաքելական օրհնոյն (ԿԱԼ. 376), և բոլոր Հայ հաւատացեալներուն ալ մերոց թողութիւն կը շնորհէր, ընդարձակ և ընդհանուր կերպով, երբ թողութեամբ վեհափառին է պատերազմ զինեալ ընդդէմ Սարակինոսաց (ԿԱԼ. 375)։ Թէպէտև նոյն միջոցին նոր խաչակրութիւն մը կազմելու խօսքեր կային, սակայն մինչ քրիստոնէից վիճակը պաշտպանութեան կը կարօտէր Արևելքի մէջ, և Երուսաղէմի վերանորոգեալ թագաւորութիւնը չարունակ յարձակմանց ենթակայ էր, և պապեր ու Լատիններ կը ջանային Հայերու օգնութեամբ իրենցները պաշտպանել։ Այս միջադէպներէն առաջ միջոց մը նորէն կը դառնին Լատիններու հետ յարաբերութեանց պարագաներ, և այդ դառնալը առիթ կ'ընծայէ Յոյներուն, որ կը սկսին փորձ փորձել Հայերը իրենց կողմը ձգելու, թէ իրենք զօրանալու, և թէ Լատինները տկարացնելու դիտմամբ։ Երբ Կոստանդնուպոլիս Լատին կայսրութիւն եղաւ 1204'ին (§ 1068), թէպէտ Յոյները ընկճուեցան, բայց իրենց դիրքը բոլորովին չը կորսնցուցին, և քիչ ետքը 1206'ին Թէոդորոս Լասկարիս մնացեալ զօրութիւնները ամփոփելով և կարգադրելով յունական կայսրութեան շարունակութիւնը հաշտեց Նիկիոյ մէջ, ուր 1222'ին իրեն յաջորդեց Յովհաննէս Վատացէս, որ հետզհետէ զօրացուց իր իշխանութիւնը, Փոքր Ասիան նուաճեց, Թեսաղիոյ ալ տիրեց, և Լատինները Բիւզանդիոնի մէջ փակեց, և քանիցս զայն գրաւելու ալ պատերազմներ բացաւ։ Վատացէսի հետ նոյն ատեն և Նիկիոյ մէջ՝ պատրիարքական աթոռը բարձրացած էր Գերմանոս Բ,

որ կատարեալ գործակից մըն էր անոր իր ձեռնարկներուն մէջ։ Այս եղելութեանց հետեւանքն էր Գերմանոսի Հայերուն մօտենալը, և անոնց հետ միաբանական բանակցութեանց մանելը (ՍԻՍ. 554)․ որոնք աւելի քաղաքական նպատակ ունէին, և եկեղեցական ձեւը՝ քաղաքականին հասնելու միջոցն էր միայն։ Հայերուն Յոյներուն հետ բանակցութեանց սկսելը նշան է այն անտարբեր ըմբռնումին, զոր Հայեր ունեցան և ունէին միշտ իրենց միաբանական ձգտումներուն մէջ, պարզապէս զօրաւոր քրիստոնեայ նեցուկ մը գտնելու դիտումով, և ոչ թէ միայն կամ միւսին ճշմարիտ ուղղափառութիւնը ճանչնալով։ Բայց Յոյները հետ այս անգամ շատ առջեւ չգացին, վասնզի դեռ զօրաւոր չէր անոնց դիրքը, քանի որ Կոստանդնուպոլիսէ դուրս կը մնային, և Վատացէսի բոլոր ձեռնարկներն ալ յաջողութեամբ պսակուած չէին, իսկ Եւրոպան ու Լատիններ շատ աւելի զօրաւոր կ'երեւային Յոյներու բաղդատմամբ։ Լատիններու աչքին Հայերը գնահատելի ոյժ մը և կարեւոր օգնութիւն մըն էին, ուսկից զրկուիլ չէին ուզեր, և իրօք ալ այլազգիներէ յաղթուած և պատերազմէ ազատած գունդերու մնացորդներ իրենց ապաստանի տեղ կը գտնէին Կիլիկիոյ, կամ ինչպէս իրենք կ'ըսէին Փոքր Հայոց թագաւորութեան մօտ, և նոյն իսկ Լատինաց առաքելական կարգերը Հայոց հովանաւորութիւնը կը խնդրէին (ՍԻՍ. 533)։

**ԲԵԼԼՈՎԱԿԵՑԻԻՆ ԳՐԱԾՆԵՐԸ**

**1112.** Այս տեղ իբր հետաքրքրական ինչ կ'ուզենք յառաջ բերել ինչ որ Վինկենտիոս Բելլովակեցին գրած է Հայոց եկեղեցւոյն վարդապետութեանց վրայ։ Բելլովակիս (Beauvais) Գաղղիոյ քաղաքներէն է, և Վինկենտիոս ԺԳ դարու Լատին մատենագիրներէն է, որ Հայերէն ԺԲ անունով, և Հայերէն բնական, Հայերէն վարդապետական, Հայերէն բարոյական և Հայերէն պատմական բաժիններով աշխատութիւն մըն ալ ունի, ուր հաւաքած է իր դարուն տեղեկութիւնները։ Առանց ուզելու Բելլովակեցիին գրական արժէքը քննել, Հայերուն վրայ գրածները բաւական են ցուցնել, թէ ինչպէս անհիմն և խառնակ զրոյցներու վրայ հիմնուած են իրեն տուած տեղեկութիւնները։ Բելլովակեցիին կարծիքով թէպէտ Հայեր բաւական մոլորութիւններ ուղղած են Նիկոն Պոնտացիի քարոզութեամբ (§ 817), և պապերու խրատիչ նամակներով, բայց տակաւին շատ մոլորութիւններ ունին, և այս պատճառով հանապազ և յերեքշաբթի ժամանակի երրորդեան յԱստուածոյ ընծայեալ շնորհօք (ԿԱԼ. 370)։ Ապա Հայերուն կարծեցեալ մոլորութիւնները համրելով կը յիշէ, թէ Աւագ շաբաթ երեկոյին հաւկիթ և պանիր կ'ուտեն, թէ Զատիկէն ետքը մինչեւ Պենտեկոստէ եղող ուրբաթները միս կ'ուտեն, թէ Ծնունդի օրը չեն գիտեր, թէ սրբոց տօներ չեն ըներ, թէ առաքելոց պահքերը չեն պահեր, թէ եղանակաց պահքեր չունին, թէ մեծ պահքին մէջ չեն պատարագեր, թէ Սուրբ Արեան անունով՝ խիստ և ծոմաջան շաբաթապահք մը ունին՝ որով Առաջաւորին կ'ակնարկէ, թէ պահք օրեր ձէթ ու ձուկ ուտելը ու գինի խմելը պոռնկութենէ ծանր մեղք կ'ըմբռնեն, թէ երկամեայ տղայոց հաղորդ կու տան, թէ բաժակին ջուր չեն խառներ, թէ կենդանիներու մէջէն պիղծեր կը զատեն, թէ ապակեղէն և փայտեղէն սկիհ կը գործածեն, թէ առանց քահանայական զգեստի կամ լոկ ուրարով կը պատարագեն, թէ շաբաթ ու կիրակի՝ սրբոց տօն չեն տօներ, թէ հանդերձեալին մէջ մաքրարանի վարդապետութիւնը չեն ընդունիր, թէ եպիսկոպոսներ պոռնկութեան պատճառով ամուսնացածում կը վըճռեն, թէ եկեղեցականներ արբեցութեան ու վաշխառութեան ու սիմոնականութեան ու հմայողութեան կը հետեւին, թէ այրի երէցկիները կրկին չեն ամուսնացներ, և թէ երկու բնութեանց վարդապետութիւնը չեն ընդունիր (ԿԱԼ. 372)։ Բելլովակեցիին յառաջ բերած խառնուրդը, զանելու և բացատրելու իսկ պէտք չենք տեսներ․ զի ոմանք սխալ տեղեկութիւններ են, ուրիշներ թիւրիմաց մեկնութիւններ, և շատեր լատինական միտքի արտադրութիւն, որ մոլորութիւն կը կարծէ ամէն ծէս ու սովորութիւն որ լատինականին համաձայն չէ։ Սակայն պէտք չէ այդ խառնակ ծանօթութեանց վրայ զարմանալ, քանի որ միւս կողմէն կը տեսնենք, որ Լեւոն թագաւորը տակաւին կենդանի կը կարծէ 1239'ին (ԿԱԼ. 377), և մինչեւ 1242

*կը յետաձգէ անոր մահը* (ԿԱԼ· 376), *և Լեւոնը Հայոց իշխանութեան յափշտակիչ կը նըկարագրէ, և թագաւորութեան սկզբնաւորութիւնը* 1242'*ին կը դնէ* (ԿԱԼ· 377), *և Կոստանդին թագաւորահայրը՝* 72 *Հայ իշխաններ մեռցնելով իւր որդին Լեւոնի աղջըկան ամուսնացուցած կ'ըսէ* (ԿԱԼ· 378)։ *Երբոր արտաքին եղելութիւններն ալ այսպէս կը ծամածուէ, պէտք չէ շատ տեսնել՝ ինչ որ Հայերուն կարծեցեալ մոլորութեանց մասին կը գրէ*։

**ԹԱԹԱՐԱԿԱՆ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐ**

**1113**․ *Թաթարներու յարձակումները, կամ լաւ եւս հրոսակները, որոնց սկզբնաւորութիւնը պատմեցինք* (§ 1103), *պահ մը դադար առած էին Ճինկիզի իւր երկիրը դառնալով, ուր* 1227'*ին մեռաւ, և իրեն յաջորդեց որդին Ուխաթա* (ԿԻՐ· 122), *որ* 5 *տարի հանդարտ մնաց, և ներքին երկիրներով զբաղեցաւ, և միայն* 1232'*ին, մտածեց դէպ Ասիոյ արեւմուտքը արշաւել*, 15 *ճիւղերու բաժնելով իւր անթիւ բանակը, որոց գլխաւոր պետերն էին Բինալ և Մուլար զօրավարներ, Նոյին անուանով, իբր օգնականներ Չարմաղանի, զոր ընդհանուր հրամանատար նշանակեց։ Մուղանի ընդարձակ դաշտը, որ Կասպից ծովին արեւմուտքը կը մնայ, և Կովկաս լեռներէն մինչեւ Ատրպատական կը տարածուի, և մեղմ օդովը, յուռթի արօտներովը ու առատ փայտովն ու ջրովը հանգիստ ձմերոց կը կազմէ, Թաթարները զայն իրենց կեդրոն ընտրեցին, ուսկից կը խուժէին իւրաքանչիւր գարնան բացուելուն, և գերելով ու գերփելով, աւերելով ու աւարելով ձմեռը հանգիստ առնելու համար նոյն տեղ կը դառնային* (ԿԻՐ· 123)։ *Չմոռնանք որ Թաթարներու արշաւանքները հիւսիսէն ալ Ռուսիա և Լեհաստան և Հունգարիա, և հարաւէն Հնդկաստան հասած էին* (ՕՐԲ· Բ· 147), *այլ մենք մեր նպատակէն կը հեռանայինք եթէ միառմի ուզէինք յիշել նոյն իսկ Հայաստանի մէջ գործուած աւերները, զորս ընդարձակ կը պատմեն ականատեսներ Կիրակոս և Վարդան, և կը նկարագրեն Գանձակ* (ԿԻՐ· 124), *Շամքոր* (ԿԻՐ· 125), *Լոռի* (ԿԻՐ· 135), *Անի* (ԿԻՐ· 138), *ու Կարս* (ԿԻՐ· 140) *քաղաքներու կոտորածները․ ընդհանուր տեղեկութիւններ ալ տալով ամենուրեք կատարուած վայրագութեանց վրայ* (ԿԻՐ· 125)։ *Ուխաթա մեծ խանը* 1241'*ին մեռաւ․ և անոր յաջորդեց Գիւք կամ Խայուխ, և անոր օրով Չարմաղան ալ համրացաւ և անկարացաւ, և* 1242'*ին իրեն յաջորդեց Բաչու* (ԿԻՐ· 152), *որ անդրագոյն եւս մղեց արշաւանքը, գրաւեց Կարինը, Երզնկան, Կեսարիան ու Սեբաստիան* (ՎԱՐ 147), *որք Իկոնիոնի սուլտանութեան ներքեւ էին։* Նոյնպէս կոտորեցին և գերեցին շատ աշխարհս և գաւառս, որ մնացեալ ազգ Հայոց վշտաբեկոց բնակեալ էին, *իսկ վիշտերը իրենց գագաթնակէտը հասան* 1243'*ին,* զի համարուէր թուականին ՈՂԲ էր, և ըստ այն թուեցան արդեանցն արժանաւոր ողբոց, *կը գրէ Վարդան* (ՎԱՐ· 147), *հայկական ՈՂԲ*=692 *թուականին տառերուն իմաստ տալով։*

**ՎԱՆԱԿԱՆԻ ԳԵՐՈՒԹԻՒՆԸ**

**1114**․ *Թէպէտ մասնաւոր դիպուած մը, բայց յիշատակաց արժանի է Վանական վարդապետի գերութիւնը, որ այս շփոթութեանց միջոցին տեղի ունեցաւ, և զոր մանրամասնօրէն կը պատմէ Կիրակոս, գերութեան ընկերը* (ԿԻՐ· 129-135)։ *Յովհաննէս վարդապետ Տաւուշեցի, առաջին Յովհաննէս Տաւուշեցիէն տարբեր* (§ 1080), *և աւելի ծանօթ Վանական մականունովը*, 1181'*ին ծնած է և Մխիթար Գօշի աշակերտած, և Մխիթարէն ետքը գըլխաւոր և հռչակաւոր եղած է դարուս Հայ վարդապետներու մէջ։ Երբոր ինքն գործի գլուխ եղաւ, Խորանաշատ վանքը հիմնեց ու պայծառացուց իւր հայրենական Տաւուշ գիւղին մօտ, Գանձակի գաւառին մէջ, և վերջէն աւելի ապահովութեան և առանձնութեան համար, անկէ քիչ հեռու Լորուտ գիւղին բարձունքը քարածայռերու մէջ եկեղեցի և վանք մըն ալ շինեց, և հաստատապէս հոն կը մնար, երբ Խորանաշատը Ճէլալէտինի ասպատակէն վնասուեցաւ* (§ 1103)։ *Երբոր Մուլար զօրավար* (1113), *այդ կողմերը հասաւ, և Վահրամ իշխան որդի Բըլու Զաքարի և ազգական Օրբելեանց, որ գաւառին կ'իշխէր, իւր Աղբուղա որդւոյն հետ տեղի տուաւ, Լորուտէ և Տաւուշէ և շրջակայ գիւղերէ բազմութիւն մը Վանականի լեռնային վանքը ապաւինեցաւ, սակայն վանքը բաւական չէր այդ բազմու-*

*թիւնը ապրեցնել, և առանց ջուրի և առանց կերակուրի մեռ էին ի մեռանել։ Պաշարող Թաթարներ բազմութիւնը կը հրաւիրէին անձնատուր ըլլալ, և ամէն դիւրութիւն կը խոստանային, և բազմութիւնն ալ վարդապետին կը թախանձէր, «[illegible], էջ առ նոսա, և արա սէր ընդ նոսա»։ Վանական վստահ չէր տրուած խոստումներուն անկեղծութեան, բայց յանձն առաւ երթալ, «[illegible]» յայտարարութեամբ, և Սոսթենէս ու Մարկոս աբեղաներուն հետ իջաւ Մուլարին մօտ, և օրը Վարդավառի տօն էր կ'ըսէ պատմիչը, որ յուլիսի 27'ին եղած կ'ըլլայ, եթէ 1242'ին դնենք պատահարը, ինչպէս ոմանք կը հաշուեն, այլ հաւանականագոյն է դնել 1236'ին Ուխտաթայի օրով, քանի որ մահուընէ «[illegible]» յառաջ եղած կ'ըսուի (ՎԱՐ·146), և այդ հաշուով յուլիս 6'ին հանդիպած կ'ըլլայ, և միշտ կ'արդարանայ այդ աւթիւ յիշուած «[illegible]»։ Երբոր զօրավարին ներկայացան, սկսան «երկրպագանել ի վերայ ծնգաց, [illegible]»։ Զօրավարը շատ մը անոյշ խօսքերէ ետքը, կը հրամայէ որ լեռ ապաստանողներն իջնեն, և այնպէս ալ կ'ընեն աբեղաներուն ձայներուն վրայ, թէպէտեւ միշտ վախով և հաղորդուելով «[illegible]»։ Իջնողներուն ջուր ու հաց կուտան, բայց պահպանութեան ներքեւ կը դնեն, միւս օր լերան վանքը կ'ելլեն և կը թալնեն։ Վանական վարդապետը, Մարկոս ու Սոսթենէս աբեղաները, Վանականի եղբօրորդին Պօղոս քահանան, Կիրակոս վարդապետ պատմիչը, և ուրիշ շատեր «[illegible]», գերի կը պահեն իրենց մօտ, իսկ մնացեալները իրենց տեղերը կը ղրկեն։ Անհնարին նեղութեանց մատնուած էին գերի մնացողները, ամբողջ ամառը բանակին ետեւէն տարուելով, հետի և բոկոտն, և գանալից բանադատուած, «[illegible]», և գիշերները նեղ նկուղներու մէջ խիստ պահպանութեան ներքեւ էին, այնպէս որ մինչեւ իսկ «[illegible]»։ Այդ խումբին մէջէն ինքն Կիրակոս, և ընկերներէն ոմանք զատուած էին Թաթարներուն իբր դրագիր ծառայելու, «[illegible]», բայց աւելի հանգիստ չէին վայելեր։ Երբոր աշնան յառաջանալուն Թաթար գունդեր իրենց ձմերոցը դարձան, գերիներէն «[illegible]», բայց երկու քահանաներ փախչելու առիթներն բռնեցան, և ուրիշներուն աչքին առջեւ սպաննուեցան «[illegible]», և մնացեալներուն առաջարկուեցաւ իրենց անձին փրկանքը վճարել, որ ազատին։ Առանձինն Վանականի վրայ պնդեցին, կարծելով թէ հարուստ է, բայց նա պատասխանեց թէ ինչ ունէին արդէն առին, «[illegible]», և առաջարկեց որ շրջակայ քրիստոնեաներուն վաճառեն զինքը. և այսպէս ալ ըրին, և քրիստոնեաներ Վանական վարդապետն ալ գնեցին «[illegible]», բայց յազատութիւն և ոչ ի ծառայութիւն։ Միայն Կիրակոսը պահեց զօրավարը՝ իբր դպիր գրագրութեան համար պիտանի էր, բայց նա ալ «[illegible]», և Գետիկ վանքը ապաւինեցաւ, թէպէտ «[illegible]» (ԿԻՐ·135)։ Անկէ ետքն է որ Վանական վարդապետ նորէն Խորանաշատի մէջ հաստատուեցաւ, և իր ժամանակին պատմութիւնն ալ գրեց, որ դժբախտաբար մեզի հասած չէ, սակայն Վարդան (ՎԱՐ· 147) և Կիրակոս օգտուած են իրենց վարդապետին աշխատութենէն։*

**ՀԵԹՈՒՄ ԵՒ ԹԱԹԱՐՆԵՐ**

**1115**· *Թաթարական արշաւանքին վտանգը հետզհետէ Հայոց թագաւորութեան սահմանները կը մօտենար, և կորուստը ակներեւ էր, եթէ Իկոնիոնի սուլտանութիւնը իյնար։ Գիաթատին Քէյխուսրու սուլտանը, որ Ալայէտտին Քայքուպատի յաջորդած էր 1237'ին, ուզեց դնել իր բնտանիքը ապահովել, «[illegible]» (ՍՄԲ·222), երբոր Բաչու Իկոնիոնի վրայ քալեց, և «[illegible]» (ԿԻՐ·156)։ Հայոց թագաւորն ու թագաւորահայրն բարեկամական յարաբերութիւններ ջանացին հաստատել Թաթարներու հետ, և Կոստանդին թագաւորահայր անձամբ Կեսարիա գնաց Թաթարներու հետ բանակցութիւնները վարելու, որոնց կողմէն Սիմէոն Ասորի վարդապետը, Ռաբան Աթա կոչուած (ԿԻՐ·150), դեսպան եկաւ Հեթու-*

*մին։ Այդ Սիմէոն յաջողեր էր մեծ խանին համակրութիւնը շահիլ, և անոր համոզել որ պէտք չէ կոտորել քրիստոնեաները, որ իրեն կը խոնարհին և կը հնազանդին և հարկ կը վճարեն, և խանն ալ նոյն ինքն Սիմէոնը միջնորդ կը գործածէր քրիստոնէից մօտ, այդ պայմանները գործադրելու համար* (ԿԻՐ. 151)*։ Լատիններն ալ կը յիշեն այդ միջոցին Յովհաննէս Կարպինեցի եպիսկոպոսին պապին կողմէն Թաթար զօրավարին մօտ գալը, քրիստոնէից պաշտպանութիւնը խնդրելու համար։ Ըստ այսմ Սիմէոն Հեթումի մօտ կու գար սովորական պաշտօնով, բայց Բաչու կը պահանջէր միանգամայն որ սուլտանին ընտանիքը իրեն յանձնուի, թէ չէ, կ'ըսէր, թէ ամէն ուէր, որ հետ մեղ գրէէր, սուտ է* (ՍՄԲ. 122)*։ Ծանր եկաւ Հեթումի պահանջուած պայմանը, մինչև ըսել, թէ լաւ էր ինձ եթէ զորդին իմ զգլխան խնդրէին յինէն, քան թէ զմայրս, այլ հնար չեղաւ Բաչուի միտքը փոխել, և ոչ ալ հնար էր Թաթարներու զօրութեան դիմադրել, ակամայ կամաւ ետ ի ձեռս նոցա, զի մի մեծ չարեաց պատճառ լիցի։ Հեթում զանց չըրաւ սովորական ընծաներն ալ, և փոխարէն Թաթարներ հաստատեցին ուէր ըստ սրտային Հայոց. եւ տուին և գիր ըստ կամին խորեանց, զոր Էլթամղայն կոչէին* (ԿԻՐ. 156)*, Այս կերպով միայն կրցաւ Հեթում հեռացնել Կիլիկիոյ վրայէն այն ահեղ փորձանքը, որ արդէն բոլոր աշխարհքը քարուքանդ ըրած էր։ Բեյլովակեցին կը խղճահարի Հեթումի ընթացքին վրայ, թէ անխռովութեամբ մեծաւ տուեալ յանձնեց՝ սուլտանի ընտանիքը ի ձեռս Թաթարաց, վասն չարեաց զբարեկամութեանն խորեանց, բայց չենք գիտեր թէ որ օրէնքով պիտի պարտաւորցնէր Հեթումը իւր ազգն ու երկիրը զոհել սուլտանին սիրոյն, որ այնչափ անգամներ մեծամեծ վնասներ հասուցած էր Հայերուն։ Բեյլովակեցիին պատմելովը Հեթում սուլտանի կիները տարած տանը մեռան ի նոյն ճանապարհէ* (ԿԱԼ. 378)*, իբր թէ Աստուած պատժած ըլլայ գործած անիրաւութիւնը, սակայն Հեթում մեռած է 1270'ին, և այդ եղելութիւնը 1244'էն հարը չէ, և ըստ այնմ պէտք կ'ըլլայ իմանալ բարոյական սատիկէտէն յայտնուած միտքն ալ։ Անտարակոյս Հեթում ապաստանած կիները յանձնելէն առաջ, կաթողիկոսին հետ խորհրդակցած է, և անոր հաւանութեամբ տրուած է յանձնելու որոշումը։ Բայց կաթողիկոսն ալ չէր կրնար բանադատիչ պայմանին առջև Թաթարներու վայրագութեան զոհ տալ Կիլիկիոյ ժողովուրդը, և երկիրին վրայ հրաւիրել ուրիշ տեղեր կատարուած կոտորածներն ու աւերածները։ Անցողաբար աւելցնենք թէ անշուշտ այս առթիւ տեղի ունեցած՝ Սիմէոն Ասորիին դեսպանութեան և միջամտութեան արդիւնքն եղած է, Սիսի մէջ Ասորւոց եկեղեցիին շինութիւնը* (ՍԻՍ. 534)*։*

**1116.** *Եթէ Հեթում և Կոստանդիններ կրցան Թաթարներուն սպառնալիքէն ազատիլ, յանձնելով Ղիաէտտին սուլտանին մայրն ու քոյրը* (§ 1115)*, սակայն անոր վրէժխնդրութիւնը չարժեցին, երբոր Թաթար ասպատակը ետ գնաց, և Ղիաէտտին իւր իշխանութեան դարձաւ, և 1245'ին Կիլիկիա յարձակեցաւ, որ այրեաց զմեզն, նորէն իրեն օգնական և առաջնորդ ունենալով Լամբրոնի Կոստանդին իշխանը* (§ 1109)*։ Կոստանդին թագաւորահայր և որդին Սմբատ սպարապետ՝ Տարսոնի մէջ ամրացան, և Հեթում Ատանան բռնեց։ Սելճուքներ Տարսոնի պաշարումը չյաջողցընելով, Կիլիկիոյ կամ Կուկլկայ կապանէն, այժման Կիւլէկ-Պօղազէն ետ կը դառնային, երբ Հայերը ետևնէն պնդեցան, և Մայծառի ճակատամարտին մէջ, մեք զեղօք անոնց, կ'ըսէ Սմբատ, որ Աստուծով խափանեցաք և կոտորելով վարեցաք* (ՍՄԲ. 123)*։ Միւս տարին 1246'ին Սելճուքներու յարձակումը նորոգուեցաւ, և թագաւորահայրն ու սպարապետը Տարսոնը լաւ պաշտպանեցին, բայց երբ պարիսպէն ներընկեց մի փլուցին թշնամիք, վհատեցան, և Պռականա բերդը տալով հաշտութիւն խօսեցան։ Սակայն նոյն միջոցին սուլտանն, երբ կու խմէր, ըստ ռսոց տօլ-տօլ, ու մեռաւ։ Իսկ մենք, կը գրէ Սմբատ, չէաք իմացեր զսուլթանին մահն, թէ ոչ՝ կորեաք նեղեալ և հաշտութեան չէինք գիջանիր։ Ասոր հետ մէկտեղ, կ'ըսէ, ետ դարձող Սելճուքներէն հարէար հազար մարդ առեալ զջախեղդ ռատակեցան՝ յորդահոս անձրևներուն պատճառով, և յետ երկու տարոյ գողոցան զՊառականն, այսինքն բերդը ետ առած են 1248'ին։ Երբ*

*այս անցքերը կը դառնային Կիլիկիոյ կողմե-րը, Հայաստանի գաւառները, կրկին չարա-չար նեղութեանց կը մատնուէին, վասնզի Բաչուն և այլ աւագանին Թաթարաց, կոր-ծէին* վասն ամբարշտութեան և ապստամբու-թեան Վրաց. *Դաւիթ թագաւորը և մեծամեծ-ները ձերբակալեցին,* կապեցին և հարին քինա-հար, *սակայն վերջէն անոնք* արձակեցին ի մահուանէ, *բայց* անպէտս կարգեցին. գերեցին ճեղս և աւարեցին, գործեցին խայտառականս ի կանայս, *այնպէս որ պատմիչը իրաւունք ու-նեցաւ ըսելու, թէ* այն ՈՂԲ կրկնեցաւ ի ՈՂԸ թուին (ՎԱՐ. 148), *այսինքն է 1249'ին։*

**ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՒ ՎԱՐԴԱՆ**

**1117.** *Մինչ այս անցքեր կը դառնային, և Հայութեան բոլոր բաժինները, թէ Թա-թարներու և Սելճուքներու ձեռաց ներքև, և թէ Կիլիկիոյ ազգային թագաւորութեան մէջ՝ աղե-տէ ու վիշտէ գլուխ չէին կրնար վերցնել, Վարդան վարդապետ Արևելցին, նոյն ինքն Վարդան պատմիչը, Մեծ մականուանեալ, և աշակերտ Մխիթար Գօշի ու Յովհաննէս Վանականի, 1240'ին ատենները* աղօթականու-թեան աղագաւ *Երուսաղէմ էր գացած* (ԿԻՐ. 162), *Կոստանդին կաթողիկոսին ուխտագը-նացութենէն քիչ ետքը, երբ տակաւին Ե-րուսաղէմ Լատիններու ձեռքն էր։ Երուսա-ղէմէ դառնալուն Վարդան Հռոմկլայ կը հան-դիպի 1241'ին կաթողիկոսին հետ տեսնուե-լու համար։ Կոստանդին երբ զայն կը ճանչ-նայ, չուզեր անկէ բաժնուիլ, կը կապէ զայն* միաբանութեամբ Աստուծոյ ընդ անձին իւրոյ կենօք և մահուամբ, մնալ հաշտ և աւելով բն-ակել *ընդ նմա* յաւիտեան (ԿԻՐ. 165)։ *Կոս-տանդինի և Վարդանի խորհրդակցութիւն-ները խեղճ ազգին և եկեղեցւոյն ողբալի վիճակին վրայ կը դառնային, և* միաբան եղ-եալ *խորհեցան,* թէ մեղք են այսմ ամենայնի պատ-ճառ, զի ամենայն մարդ խնամով խոկայր ի գործել զհաճոյս կամաց իւրոց։ *Ժամանակին զեղծում-ները համրուած տեսն կը յիշուին մերձաւոր-ներու հետ ամուսնութիւն, ամուսնալուծու-թիւն, ապօրինի կենակցութիւն, պահքերու անզգուշութիւն, և հեթանոսական կենցաղ, և* որ մեծն է քան զամենայն չարիս, *կաշառով ձեռնադրութիւններ անարժաններու, ագէտ-ներու և մանկահասակներու, և եկեղեցա-կաններու խառնակեցութիւն* (ԿԻՐ. 162)։ *Այդ զեղծումներու դարման մը հոգալու համար կաթողիկոս ու վարդապետ,* ըստ աստուա-ծոյ կամաց, *այսինքն հայրապետանոցին վար-դապետներով. 1243'ին Հռոմկլայէ կու գան* յաշխարհն Կիլիկեցւոց *Սիս մայրաքաղաքը, և Հեթումի* հրամանաւ և յօժարութեամբ (ԿԻՐ. 168), *կամ ըստ այլոց Կոստանդինի* հրամանաւ *և Հեթումի* յօժարութեամբ (ԿՐԿ. 287), *ժո-ղովի կը գումարեն* զեպիսկոպոսունս, զվարդա-պետս, զմիանձունս և զվանաց առաջնորդս, զիշ-խանս և զիշխեցողս (ԿԻՐ. 168), *և տիրող զեղ-ծումներուն համեմատ* ամենեցուն կամակցութեամբ և յօժարակամ *կը հաստատեն* օրէնս և կանոն ուղղափառ և քրիստոնէից և կարգի գործելոյ, *և անոնց վրայ կ'ուխտեն ժողովով* յանձն առ-նուլ ամենայն կարողութեամբ զերծել առնելոյ (ԿԻՐ. 169)։

**ՍԻՍԻ ԳՈՒՄԱՐՈՒՄԸ**

**1118.** *Ժողովական կանոններուն վեր-լուծութեան չանցած, պէտք է դիտել տանք թէ Սիսի գումարումը կատարեալ ազգային ժո-ղով մը չկրցաւ ըլլալ, ո-րովհետև միայն Կիլիկիոյ ներկայացուցիչներով կազմուեցաւ, և անկէ դուրս եղող Հայաստանի և Փոքր Ասիոյ ե-պիսկոպոսներուն և վարդապետներուն և ոչ իսկ հրաւէր ղրկուեցաւ։ Կոստանդին կա-թողիկոս մտադիր էր գալ* անձամբ և այդր, *այսինքն արևելեան գաւառները, և* ընել զփափաք հաստատութեան իւրոյ, *և միանգամայն այն կողմերու եպիսկոպոսներէն և վարդա-պետներէն* պահանջել յետ ազդի ստորագրել (ԿԻՐ. 169), *որ է ըսել, Սիսի ժողովին որո-շումներուն կատարեալ ազգային կանոնի ոյժ տալ ընդհանուր համաձայնութեամբ։ Կոս-տանդին իր փափաքը չկրցաւ լրացնել և տեղէն չարժուիլ, ոչ միայն* զի ծերացեալ էր նա (ԿԻՐ. 163), *այլ զի նաև* ժամանակն խառ-նակ և ալեկոծեալ *էր* (ԿԻՐ. 165)։ *Այս պատճա-ռով* զերեք ամս *սպասելէ ետքը* (ԿԻՐ. 168), *Վարդան վարդապետը ճամբայ հանեց, որ* ի հինգ ամաց հետէ *իւր մօտն էր* (ԿԻՐ. 165), *և կատարեալ մտերիմն էր, և ունէր* զսէր և զբան իւր յամենայն իրս, *որպէսզի գլխաւոր վիճակները պտտի, եպիսկոպոսներուն և վարդապետներուն համաձայնութեան ստո-րագրութիւնը առնէ, և հաւաքելէն ետքը*

*բոլորը մէկտեղ կաթողիկոսին բերէ* (ԿԻՐ. 166)։ *Այդ մանրամասնութիւնները շատ իսկ են ցուցնել, թէ Սիսի* 1243 *տարւոյ ժողովին որոշումները չեն կրնար ազգային ժողովական կանոնի հեղինակութիւնը վայելել, քանի որ իրենց կազմութիւնը կիսովի էր եղած, և լրացումը երեք տարիներէ ետքը պիտի կատարուէր, և այն ալ ամբողջական կերպարան մը չկրցաւ առնել։ Բաց աստի կանոններու վերլուծութիւնն ալ պիտի ցուցընէ, որ անոնք դաւանական և կանոնական գլխաւոր նիւթերու շուրջը չեն դառնար, այլ պատահական և ժամանակին գեղծումներուն պատշաճեալ առժամեայ կարգադրութիւններ են, որոնք շարունակ փոփոխման ենթարկեալ կէտեր են։ Պէտք է դիտել ևս, որ ձեռուընիս չունինք ժողովական որոշմանց վաւերական պատճէնը, եպիսկոպոսներուն և վարդապետներուն և իշխաններուն թուովը և ստորագրութիւններովը, որ կարենայինք անոնց արժէքը օրինաւորապէս գնահատել։ Իսկ Կիրակոսի յառաջ բերած չրջաբերականին մէջ* (ԿԻՐ. 167-173) *Կոստանդին այնպիսի, բացատրութիւններով կը հաղորդէ ժողովական որոշումները, որ աւելի իր անձնական առաջարկութիւններ կ'երեւան, քան թէ ժողովական անով խմբագրուած հրամաններ։ Ասիկայ մեզի իրաւունք կու տայ ըսելու, թէ Կոստանդին կրցաւ Սսոյ գումարման կէտերը իր կողմէն ընդլայնել, կամ իր կողմէն ալ կէտեր աւելցնել, զորօրինակ երբ կ'ըսէ զայս եմք հրամայեալ առաջին արքային Հեթմոյ և հօր նորա Կոստանդեայ* (ԿԻՐ. 171), *և կամ է Ֆռանկաց եկեղեցին առ մեզ* (ԿԻՐ. 173), *և ուրիշ նմանօրինակ դարձուածներ։*

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ԳԼՈՒԽՆԵՐ**

**1119.** *Գալով Կոստանդինի չրջաբերականին մէջ ցուցուած* 25 *գլուխներուն, զորս ուրիշ օրինակներ* 23'*ի կը վերածեն՝ երկուքը իրարու խառնելով* (ԿԻՐ. 289), *առաջին չորսերը ձեռնադրութեանց մասին են։ Ա. Արժանաւորներ միայն ձեռնադրուին և առանց արծաթոյ, որ է տեղւոյ տեղւոյ խառնի պահուած չէ վասն աղքատութեան և տկարութեան։ Բ. Եպիսկոպոսութեան կոչուին արժանաւորքն միայն և ընտրեալքն, այն ալ ծերոց ժողովրդեամբ և վկայութեամբ և ծերոցն կամակցութեամբ, որ ընտրութենէ աւելի հաւանութիւն կը ցուցնէ. տարիքն ալ ոչ՝ նուազ քան զերեսուն ամ։ Այս երկու կանոնները ոմանք մէկի կը վերածեն* (ԿՐԿ. 289)։ *Գ. Իբր առաջին գործ եպիսկոպոսին, կը հրամայէ սահմանել զուսուցիչս և զսարկաւագունս ըստ կանոնի եկեղեցւոյ, և կը պահանջէ որ անդադրելի և բերանով մինչեւ ի սպասաւորութիւն փառայոյն։ Դ. Ձեռնադրութիւն ընդունողներուն՝ ամենայն և ամբողջութեամբ օժտուած ըլլալնին, և անձանց յարգանաց և անարատութեամբ վկայութեամբ հաստատուած, և առանց արծաթոյ նշանակուած ըլլալնին ստուգելէ զատ, կը պահանջէ ևս որ տարիքով ալ ըլլան, ոչ՞ նուազ քան զքսանեհինգ ամ երիցն, և սարկաւագն քսան ամ։ Ուրիշ օրինակներ կը գրեն ոչ՝ նուազ քան զերեսուն ամ երիցն և սարկաւագն* (ԿՐԿ. 289), *որ յարմարագոյն չերեւիր երկու աստիճաններուն նոյն տարիքը տալովը։ Զորս ևս կանոններ քահանայագործութեանց համար են. Ե. Պսակ և կնունք նշխարաւք և յեկեղեցւոջ պիտի կատարուին, և ընդունողներ պիտի հաղորդուին։ Միայն կնունքը կրնայ ըլլալ յորժամ և ի տան, եթէ մահու երկիւղ իցէ երեխային. խորհուրդները պիտի պաշտուին միշտ առանց վարձու։ Զ. Ամէն քահանայագործութիւններ, կնունք և պսակ և թաղումն, պիտի կատարուին առանց վարձու և ձրի, այլ եկեղեցին և աղօթից մեծարանօք, այսինքն թէ հանդիսատեսներ աղօթքներուն մասնակցութիւն պիտի ընեն երկիւղածութեամբ։ Է. Մկրտութեան աւազանը հաստատուն և անշարժ և քարեղէն ծածկած պիտի ըլլայ, որով շարժական աւազանները կ'արգելուին. նախընթաց կանոնով ալ կնունքը յեկեղեցւոջ ընել հրամայած էր, ինչպէս և պսակը։ Ը. Պսակուելիքները պիտի ըլլան վեց ծննդովք հեռացեալ յազգակցութենէ արեան, և փեսայն չորեքտասան և հարսն երկոտասան տարեկանէ պակաս պիտի չըլլան։ Տարիքները յատին կանոններով և այժմեան սովորութեամբ շատ նուազ են, որովհետեւ այդ տարիքներու մէջ կատարեալ խելահասութիւն չենթադրուիր։ Իսկ հասի ճիւղերը մինչեւ վեց բարձրացած են, միշտ երկու կողմերու ծնունդները գումարելով, և եօթներորդի արգելք յիշուած չէ։ Իսկ խնամութեան ճիւղերու բնաւ խօսք չըլլար, և միայն արեան ազգակցու-*

Նիկիոյ կը յիշուի: Շահապիվանի ժողովին մէջ տեսանք երեք ճիւղերու արգելքը երկու գիծերը միանգամայն առնելով (§ 230), այս տեղ երեքը երկու գիծերու վրայ զատ զատ առնուելով, ճիւղերը վեցի բարձրացած են, և այս ալ յայտնապէս Լատիններու նմանողութեան արդիւնքն է, որոնք իւրաքանչիւր գիծը մինչև չորս առնելով ութը ճիւղերու արգելք կ'ընդունէին, Հայերը կերպով մը անոնց մօտեցած կ'ըլլան՝ իրենց համագումար երեքը իւրաքանչիւր գիծի վերածելով:

**1120**. Յաջորդող կանոններ ընդհանուր կերպով զանազան բարեկարգական կէտեր նկատի կ'առնեն: Թ. Եպիսկոպոս կամ վարդապետ կամ երէց կամ [illegible], թերևս գիւղի քահանայ, կամ թէ գերիներու հետ եղող քահանայ, յօտար աշխարհէ եկած՝ կ'արգելուի [illegible] ու [illegible], բայց եթէ Նէմ եպիսկոպոսին հրամանաւ, բայց ճշմարտութեան մ՛ հաւաստեացեն: Վերջին պայմանը ոմանց մօտ կը պակսի (ԿՐԿ. 290): Այդ կանոնին մէջ յիշուած օտարը, մենք օտար եկեղեցիէ եղողներուն, իսկ ճշմարիտը Հայ եկեղեցիէ եղողներուն վրայ կը սիրենք իմանալ, ապա թէ ոչ ճշմարիտի դէմ սուտերը պիտի իմանայինք, և կանոնը իմաստէ զուրկ կը մնայ: Ժ. Դրոց դասատուք և դրոց աշակերտք վկայութեամբ ընտրուած պիտի ըլլան, և առաջինները գիտունք, և դրոց փորձք և տեղեակք և հոգոյ պէտք է ըլլան, կ'ըսէ կանոնը, որ յայտնապէս սուրբ գրոց ուսման համար է: ԺԱ. Նոյն իսկ սուրբ գիրս եկեղեցւոյ գրել, միայն ուղղափառաց և գիտնոց և ուղղագիտաց պիտի թոյլատրուի, վասն զի կրնային ձախող հետևանքներ բղխիլ անվարժ և անուղիղ ընդօրինակողներուն գրիչէն: Այս ալ տեսակ մը զգուշական գրաքննութիւն է, որ շատ կարևոր էր երբ լատինասիրութիւնը կը սկսէր ընդարձակուիլ: ԺԲ. Եպիսկոպոսներուն կը հրամայուի երկիցս անգամ ի տարւոջ շրջիլ յետ [illegible], և ուրիշ կարգադրութեանց հետ, սուրբ և գիտուն քորեպիսկոպոս դնել, որ [illegible] [illegible] ընդ կանանց [illegible], երկիւղած և [illegible]: Քորեպիսկոպոսներ եպիսկոպոսի օգնականներ են, որ երբ եպիսկոպոս քաղաքի մէջ կը գործէ, կը հովուէ ու կը դատէ, անոնք ալ վիճակին գիւղական շրջանակներուն մէջ միևնոյն գործերը կը կատարեն: Միւս կողմէն յայտնի է որ հին ատեններ դատական գործերէն շատերը եկեղեցական ատեան կը հանուէին, ինչպէս կանոններու մէջ յիշուած նիւթերէն ալ կը քաղուի: ԺԳ. Կանոնը նոր և ասկէ առաջ չյիշուած պաշտօն մը կը յիշէ, որ է խոտա-քահանայք: Իշխաններէն ոմանց խոստովանութեան հայրեր յիշուած էին, որոնք պարզ ծխատէրներ էին, բայց ընդհանուր խոստովանահայրեր, որ ամէն կիրակի ժողովուրդը պիտի խոստովանցնեն ամեն շաբաթու յանցանացն, և քահանաներն ալ նոյն խոստովանահայրներու հրամանով միայն [illegible] ծածկեալ գործոցն պիտի հաղորդեն, բոլորովին նոր դրութիւն մըն է՝ որ Լատինէ ալ փոխանցում մը չէ, անցեալին մէջ յիշուած չէ, և ապագային մէջ հետք թողած չէ: Միւս կողմէն Կոստանդինի և Սիսի ժողովին մէկ նոր կարգադրութիւնն է ըսելու ալ փաստ չենք գտներ: Նկատելի է գլխաւորապէս ոտանց լուալ ընելու կրկին և կրկին հրամանը: Թերևս դրամ չորթելու կերպ մըն էր, տեղ տեղ մուծուած, զոր կանոնը կ'ուզէ կարգի բերել, և կը հրամայէ որ խոստովանահայրները ծեր և գիտուն քահանաներէ առնուին, և գործողութիւնը ոտանց լուալ կատարուի: ԺԴ. Կանոնը կը հրամայէ հաղորդել հիւանդներուն ըստ [illegible] և [illegible] չառնել, ինչ որ դիւրին պիտի չըլլար Կիլիկիայէ դուրս: Աւելի կարևոր է նոյն կանոնին երկրորդ մասը, որ իբր զատ կանոն մը կրնար համարուիլ, ինչպէս ոմանք բաժնած են (ՁԱՄ. Գ. 228), և որ ծխատիրութեան կերպը կ'որոշէ, թէ ծխատէրի ընտրութիւնը պէտք է եպիսկոպոսն հրամայեսցէ, և ոչ թէ ժողովուրդը որոշէ [illegible] և [illegible] լինել: Ծուխերուն հիմնապէս անբաժին ըլլալուն սկզբունքն է, որ մինչև վերջի ատեններ քաղաքներու մէջ ալ հաստատուն կը պահուէր, և որ այժմ բոլորովին մոռացութեան տրուած կը տեսնուի:

**1121**. Ասկէ ետքը եկող կանոններ պարզ բարոյականութեան գործերու կը պատկանին: ԺԵ. կանոնը կ'ուզէ որ եպիսկոպոսներ և արքեպիսկոպոսներ ուղղեն [illegible],

զընթացսն, զըմպս և զմեծնայս յանցաւորսն։ Նախ ջանան երկիւղիւ գեհենին ի դարձ ածել, իսկ եթէ այն չբաւէ, մարմնաւոր պատուհասել ալ վարուին, և տուգանել ալ չքաշուին, մանաւանդ անբարոյնե-

**ԲԱՐՈՅԱԿԱՆ ԳԼՈՒԽՆԵՐ**

րը, որոնք այր և կնոջ մէջ կը մտնեն, բոզ կին ունին, օրինաւոր կիներնին կը թողուն ու բոզերուն կ'երթան, կամ ապերասանեալ պոռ-ծանաց նուղան զկանայս աւտոց խանձեն պառնկա-նեան։ Այսպիսիներէն եթէ պատուաւոր է մարդն, անողորմ տուգանօք խրատեսցեն, և եթէ միջաւո-րը այր է՝ թագաւորը ըստ մեղաց և իշխանը մեղապարտը խրատեսցէ, իսկ եթէ կին է յան-ցաւորը՝ երէցն խրատեսցէ։ Խրատը այս տեղ գանակոծութիւնն է, ինչպէս Պիղատոս ալ կ'իմանար Քրիստոսի համար խօսած ատենը (Ղ.ԿՍ.ԻԳ.16)։ Իսկ ըստ մեղաց և մեղապարտի բացատրութիւնը յայտնի և գաղտնի չնու-թեանց զանազանութիւնը կը ցուցնէ։ ԺԶ. կանոնը պահոց համար է. ուտելիքի մասին կ'ըսէ որ աւուրց չկերն և չերթոյ և չխոյ եղիցի, իսկ օրերու մասին, աւուրհացէն և ուրբաթ և չորեքշաբթին կը յիշէ, ու չաբաթապահքերուն վրայ չխօսիր, և ի հարկէ հիւանդութեան բա-ցատութիւնը կ'ընդունի, իսկ անոնց որ պահ-քը կը լուծեն, իբր պատիժ կը հրամայէ որ տուգանեսցին և յաւէտ պահեսցեն, և պահօք վճա-րեսցեն, որով պահոց օրէնքը արտաքին պա-տիժով միայն արգիլուած կը մնայ, տուգան-քով վճարել ի նպաստ աղքատաց, և լուծած օրին տեղ ուրիշ օր պահել։ Ուրբաթը և չո-րեքշաբթին հաւասարապէս Քրիստոսի չարչա-րանաց աւուրք կ'անուանէ, և թերևս կ'ակ-նարկէ Յուդայի մատնութեան չորեքշաբթի օր տեղի ունեցած ըլլալուն, սակայն չորեք-շաբթին բուն չարչարանաց օր չէ, և կը պատուուի իբր Աւետումի օր և Մարդեղու-թեան խորհրդոյն յիշատակ, իբր զի է նոր-րոց օր դարձեալ հրեշտակին եւ աւետիսին կո-չման (ԺԱՄ.294)։ ԺԷ. կանոնը յիշոցներու դէմ է, անոնք որ ամէն նուիրական բան, հաւատք, սաեղծող, կնունք, հրեշտակ, քա-հանայ, բերան, երես, գերեզման, և այլ այսպիսի կը հայհոյեն։ Կը յայտարարէ որ Հեթանոս թագաւորի և Կոստանդին թագա-ւորին հետ համաձայնութեամբ՝ ձեղցառակ պիտի դրուին ամէն տեղ, քաղաք ու գիւղ, բերդ ու դարպաս, որ հայհոյիչներուն զկե-զառն հարցեն կամ լեզուն ծակեսցեն և լար ինըն-ածցեն, և ծեծեսցեն շուրջ ածցեն օր մի, և ըստ դոյն տուգանս առցեն և յաւէտ պահեսցեն։ Այդ խիստ օրէնքը, որ իր բնութեամբ արևել-եան խստութեանց նմանութիւնն ունի, ու-ւելի արևմուտքի մէջ սկսած հաւատաքըն-նական խստութեանց հետևողութիւն պէտք է նկատուի։ Այս տեղ ալ ոմանք պահոց և հայհոյութեան կանոնները մէկ գլուխի վե-րածած են (ԿՐԿ.291)։

1122. Կը հետևին քանի մը կանոններ յատկապէս քահանայից կենցաղին և պար-տաւորութեանց մասին, ԺԸ. Կանոնը ընդհանրա-պէս կը տրամադրէ որ եթէ վերոյիշեալ յանցանք-

**ՔԱՀԱՆԱՅԻՑ ԳԼՈՒԽՆԵՐ**

ներուն մէջ ինկողը քահանայ է, կրկին պա-տուհասի պարտեսցի, հանդերձ կարգիւն, կամ թէ կրկին պատիժ ընկալցի և տանջեսցի կարգաւն հանդերձ (ԿԻՐ.292), և յարմարագոյն կ'երևի իմանալ թէ կարգն ալ վրայ պիտի տայ, քան թէ ըսել թէ պիտի պատժուի կարգը վրան մնալով։ ԺԹ. Քահանաներուն կ'արգիլէ զայ եկեղեցւոյ գործեր կատարել, ինչպէս նօտա-րութիւն կամ որսորդութիւն, որով պիտի իմանանք հանրային գործերը, և ոչ տան-ձին և անական աշխատութիւնները կամ սեփական հողագործութիւնը։ Այնպիսի գործ ընողներուն և անարժան և անարգեալ քահանա-ներուն համար կը հրամայէ որ անոնց զժա-ռանգութիւնն ի բաց առցեն, այսինքն ծխատէրու-թեան իրաւունքներէ զրկեն։ Ի. Քահանա-ները կը պարտաւորէ, որ այրերը ու կիները զատ, կուսան աղջիկները զատ, և մանր տղաները զատ եկեղեցին ժողվեն, ուսուցա-նեն, խրատեն, սաստեն, և անոնց բարոյա-կանին հսկեն։ Իսկ եթէ անկարող մէկը գտնուի, ի յետս այլ կարգեսցեն որ առնիցէ նոյն գործը։ ԻԱ. Փոխադարձաբար ժողովրդական-ներուն ալ կը հրամայէ, որ քահանաներուն իրաւունքը չխաբեն և յօժարութեամբ վճա-րեն իրաւունքները, ինչպէս են պտղոց պտուղ, բաժին մարդոյ, պտուղ ընծայ, նաղման հանդերձ, և ժամու դրամ։ Ժամու դրամին վրայ անդրադառնալով կը յարէ, թէ պէտք չէ ուզուի ու վճարուի իբր գին պատարագի, այլ լոկ իբր հանդերձ և կերակուր երիցանց։

*ԻԲ. Քահանաներուն ալ պարտք կը դնէ, որ ժողովուրդէն առածնուն մէջէն եպիսկոպոսին իրաւունքը տան* հնձանէ, կալէ և ընծայէ: *ԻԳ. Կանոնով ալ կը յիշեցնէ հայրապետին եպիսկոպոսներէն ստանալիք իրաւունքը, և յառաջ կը բերէ Լուսաւորչեան կանոն մը,* Քահանայն զժողովուրդն տասանորդէ, և եպիսկոպոսն զքահանայս, և հայրապետն զեպիսկոպոսունս: *Կը յանձնարարէ որ վճարումները յօժարութեամբ և խնդութեամբ ըլլան և ոչ ագահութեամբ,* որ ածեալն հաստատ և անկորուստ մնան, և եկեղեցւոյն պայծառ, և Աստուծոյ օրհնութիւն խառնի յարդիւնս արդարութեան:

**ԶԻՋՈՂԱԿԱՆ ԳԼՈՒԽՆԵՐ**

**1123.** *Վերջին երկու կանոնները, Լատիններուն միրուը չինելու համար զիջողութիւններ են: Կոստանդին կաթողիկոսին և Հեթում թագաւորին շրջանը, Լատինականութեան հանդէպ զիջողութեանց նախաքայլերուն ժամանակն է, այն ակնկալութեամբ թէ Արեւմտեաններուն զինուորական օգնութիւնը և քաղաքական հովանաւորութիւնը թումբ պիտի կանգնին արեւելքի Թաթարներուն և հարաւի Եգիպտացիներուն դժպհի զօրութեան դէմ: Պահլաւունիներուն օրով ինչինչ լատին արարողութիւններ կրցան ունեցուիլ իբրեւ նորութիւն, այլ փոփոխութիւններ տեղի չունեցան: Բարձրբերդցիին օրով փոփոխութիւններու քայլն առնուիլ սկսաւ: Թէպէտ գործը աննշանակ և երկրորդական կէտերու վրայ ամփոփուեցաւ, բայց այն դուռ բացաւ, որ հետզհետէ զիջողական փոփոխութիւններ կարեւորագոյն կէտերու վրայ ալ տարածուին: Բարձրբերդցիին զիջողութիւնները Սսոյ գլուխներուն վերջին երկուքներն են: ԻԹ. կանոնը* Սուրբ Աստուածն'ի ու Խաչվերաց'ին *համար է, որուն համար, օտարներ կը պնդէին թէ Երրորդութեան վրան կ'իմացուի, մինչ Հայերը կը յայտարարէին թէ իրենք ի դէմս Որդւոյն Աստուծոյ կ'երգեն: Բայց դիտողութիւն ընողներ կային, թէ* Սուրբ Աստուած'էն *առաջ եղող* Գոհանամքէն *և* Լոյս զուարթ *աղօթքներու՝ հանգիստներուն վերջաւորութիւնները,* է Հայր և Որդի և է սուրբ Հոգին *առարկային, յաջորդ երգը ի դէմս Երրորդութեան կը առնէին: Դիտողութիւնը բնաւ նշանակութիւն չունէր, վասնզի ոչ երբեք նախընթաց աղօթքը երկրորդին ուղղութիւնը կրնայ բանադատել, թէ ոչ ամբողջ ժամերգութեան մէջ հնար պիտի չըլլար դէմքը փոխել: Սակայն Բարձրբերդցին խնդիր մը պակաս ընելու նպատակով կը հրահանգէ, որ առաւօտուն* Խաղաղութեան մեր *հանգիստը աւարտի,* գոհանամք փառաւորեսցուք զեկեղեցին Հօր և սուրբ Հոգւոյդ Քրիստոս Աստուած մեր՝ *վերջաւորութեամբ* (ԿՐԿ. 293), *և երեկոյին* Քեզ երկիրպագանելով *հանգիստն ալ աւարտի,* մեզ է քաղցրանս առատեսցուք ամենայնի տէրութեանդ Քրիստոս Աստուած մեր՝ *վերջաւորութեամբ* (ԿՐԿ. 294), *ինչպէս որ սովորութիւն դառնալով մինչեւ այսօր ալ կը գործածենք* (ԺԱՄ. 253, 471), *թէպէտ այն էական պայման մը չէ: Միւս խնդիրը որ ԻԵ. կանոնին նիւթ կը կազմէ Հիւանդաց իւղն է: Լատիններ մեծ կարեւորութիւն տուած են այդ իւղին, զոր եօթն խորհուրդները լրացնելու համար թիւի անցուցած են* Վերջին օծում *անունով, և հիմնուելով Յակոբոս առաքեալին խօսքերուն,* Հիւանդանայցէ՞ ոք ի ձէնջ. կոչեսցէ զերիցունս եկեղեցւոյն և արասցեն ի վերայ նորա աղօթս, օծցեն իւղով յանուն Տեառն, և աղօթք հաւատոյ փրկեսցեն զաշխատեալն (ՅԱԿ. Ե. 14): *Առաքեալը ամէն հիւանդութեան առթիւ ըլլալիք օծում մը կը յիշէ, և զօրութիւնը աղօթքին կու տայ և ոչ օծումին, մինչ Լատիններ յատուկ և վերջին օծում մը կազմած են, զօրութիւնն ալ օծումին վերագրած, ինչ որ Հայեր իբր վարդապետական կէտ չեն կրցած երբեք ընդունիլ: Այսուհանդերձ իբր բարեպաշտական մի գործ օծումը արգելելու ալ պէտք չեն զգացած, և այս հոգւով վարուած է Օձնեցին, երբ գրած է թէ* արժան է զհիւանդաց զիւղ քահանային օրհնել ըստ խորհրդ աղօթիցն, *մինչ միւռոնին համար կը գրէ թէ* դուռ և արժան է (ՕՁՆ. 26): *Օձնեցիին կանոնէն կ'օգտուի Բարձրբերդցին, Լատիններուն դիտողութեան առջեւը առնելու, և կը յանձնարարէ հիւանդաց ձէթ օրհնել, զոր* պատեհ գոյ *կ'ըսէ* և փրկեսցէ: *Յետոյ կ'աւելցնէ* և հարկաւոր, *բայց պատեհութեան հարկաւորութիւն միայն, լսեցնելու համար այն դիտողութիւնը՝ զոր է* Ֆռանկաց փրկաւէն, *և այս տեսութեամբ կ'իմացուի նաեւ բառը, թէ* դուռ

է առնել, և որոշել ստուգել (ԿԻՐ. 173)։ Բարձրբերդցին ոչ յստակ և վերջին օծումի խօսք կ'ընէ, և ոչ խորհուրդի անունը ունի, հետեւաբար հնար չէ հաստատել, թէ Սիսի ժողովին կամ Բարձրբերդցիի շրջաբերականին մէջ Վերջին օծման խորհուրդ մը հաստատուած կամ ընդունուած ըլլայ, այլ ընդհանուր կերպով հիւանդներու վրայ աղօթքի ատեն օծում ալ գործածելու յանձնարարութիւնն է, զոր Օձնեցին արգելել ասած էր, և Բարձրբերդցին ալ զօրէն կը տեսնէ Լատիններու հետ խնդիրը կարճելու համար։ Մնայուն և խորհրդական բան մը չըլլալը կը հետեւի նաեւ այն յանձնարարութենէն որով կը պատուիրէ, որ քահանայն օրհնէ ձէթը, իւրաքանչիւր անգամ պէտք եղածին չափ որ աւելի չգայ, և ոչ թէ եպիսկոպոսական օրհնութեամբ մէկ անգամէն պատրաստուի, և անկէ ցրուի միւռոնի նման, ինչպէս կ'ընեն Լատինները։ Օձնեցիին համար ըսուածը, թէ զատեալ է զեղ յօծմոց (ԿԻՐ. 173), պատմական ստուգութիւն չէ, ինչպէս որ մենք ալ իր կարգին դիտեցինք (§ 575), և Բարձրբերդցին անորոշ և անհիմն զրոյցի մը արձագանգ եղած է, և պատմական վկայութիւն չկազմեր։

**1124.** Վարդան վարդապետ, իբրև կաթողիկոսական նուիրակ, իրեն հետ ունենալով հետեւորդներ, ընդ նմա առաքեալ է կաթողիկոսն, ուղեւորեցաւ յԱրեւելս՝ Հայոց Ներքին գաւառներուն մէջ շրջան մը ըրաւ, յեպիսկոպոսս և վանորայս և յիշխանս, ամէնուն ներկայելով կաթողիկոսին շրջաբերականը, և պահանջելով յամենայնէ ձեռագիր հաւանութեան։ Բարձրբերդցիին առաջարկները կամ Սիսի որոշումները լաւ ընդունելութեան չարժանացան, ծանր թուեցաւ հրամանն, զոր պատմիչը օտարութեան և արտաքնութեան կը վերագրէ, առանց դրամի կատարուելիք քահանայագործութեանց ակնարկելով, այլ կրնար վերագրել գիրին մէջ եղող լատինամիտ զիջողութեանց, ուսկից շատ հեռու էին Արեւելեայք. բայց դժբախտաբար իրենց դիրքը խախտած էր, Թաթարներու ու Պարսիկներու ու Վրացիներու փոխադարձ պատերազմներուն և համակիր հալածանքներուն երեսէն, ամէն կազմակերպութիւն կորսուած, և համաձայնութեամբ բան մը խորհելու պատեհէն իսկ զրկուած էին։ Ուստի զատ զատ միալով ուխտեցին արհամարհել. այլ ի վերջն երեսս ածացուցին, և եդուն ձեռագիր, ոչ թէ հաւանութեան, այլ պարզ հնազանդութեան, առնել զհրամանն (ԿԻՐ. 173)։ Ընդհանրապէս պէտք էր, որ Հայաստանի եպիսկոպոսութիւնը, իբրև մեծագոյն մասը հայութեան և Հայ նուիրապետութեան, իր համաձայնութիւնը բերէր Սսոյ ժողովական որոշումներուն, ընդհանուր և ազգային կանոնի այժ առնելու համար (§ 1117)։ Ստորագրութիւն տուող եպիսկոպոսներէն կը յիշուին Սարգիս Կարնոյ, Սարգիս Անւոյ, Յակոբ Կարսի, Գրիգոր Բջնոյ, Մկրտիչ Հանբերդի, Համազասպ Հաղբատի, և այլ եպիսկոպոսունք որ է կողմանս կողմանս։ Համաձայնութիւն յայտնող վանքերէն կը յիշուին Սանահին, Գետիկ, Հաղարծին, Կեչառիս, Հաւուցթառ, Այրիվանք, Յովհաննավանք, Սաղմոսավանք, և որ շուրջ զնոքօք։ Առանձինն կը յիշուին Ներսէս Աղուանից կաթողիկոս, Յովհաննէս Տուեցի եպիսկոպոս, Յովհաննէս Վանական վարդապետ, Աւագ Օրբելեան իշխան՝ Իւանէի որդին, որ Թաթարներուն հաւատարիմն էր դարձած և Հայերու պաշտպանութիւն կ'ընէր, և կ'երեւի որ հօրը յանդգնութեանն ալ չէր հետեւեր, քանի որ այլեւս Վրացիներէն ակնկալութիւն չունէր։ Վարդան վարդապետ պաշտօն ունէր հաւանութեան ձեռագիրները հաւաքելով՝ անձամբ Բարձրբերդցիին ներկայել. բայց կ'երեւի թէ արդիւնքը գոհացուցիչ չըլլալուն, շուտեց Հռոմկլայ դառնալ, և առցած գիրերը ղրկեց կաթողիկոսին, և ինքն գնաց իր վանքը, որ է Կայենի Սուրբ Անդրէասը, Կայենի բերդին մօտ, որ Աւագ իշխանի կեդրոնն էր, և հոն միայն ստորագրեցին զհրամանն (ԿԻՐ. 174)։

**1125.** Վարդանի ձեռք բերած արդիւնքը, որչափ և չափաւոր և դրեթէ բռնադատեալ, գոհացուցիչ եղաւ Բարձրբերդցիին, որ իր իշխանութեան ամէնէն ընդունելուն և իրեն անձին համար յարգանքի նշանակ սեպեց։ Հազիւ թէ Վարդանէն եկած գիրերը

ՎԱՐԴԱՆ ՆՈՒԻՐԱԿ

ՍՄԲԱՏ ՊԱՏԳԱՄԱՒՈՐ

առաջա 1247ին, իբրև իր կողմէն սիրոյ և գոհունակութեան արտայայտութիւն՝ փու-թաց հայրութ ընծաներ գրկել եկեղեցեացն յա-րեւելը, և գլխաւորաբար ի պատրիարքաց վանօ-րայս, և պատրաստակ մեծամեծին նախարարս ի սպա-սաւորաց որքոյ, մետաքսակէնս, ի կերպասոց զեղջէ դանոց, և ամէնքը ձանձրալի հանեց հայրապետանոցին ապստամբ Թէոդոս վար-դապետի ձեռքով, որ չոյլի և խորամանկութեամբ իր տեղը յանձնել բառ պաշտաճի (ԿԻՐ. 174): Այդ միջոցին էր, որ Հեթում թագաւոր ալ ուշադրութիւն դարձուցած էր արևելեան գաւառներուն վրայ, որոնց բախտը այլ ևս Թաթարներուն կամքէն կախում ունէր, և մտածեց եւսքանգեա մշակել անոնց հետ բարեկամութիւնը, թէ իր թագաւորու-թեան ապահովութիւնը ձեռք բերելու, և թէ ներքին գաւառներու Հայերուն բարօ-րութեան նպաստելու համար: Իր փափաքն էր անձամբ տեսակցութեան երթալ Բաթու մեծ խանին և անոր միտքը գրաւել խնամա-տուն ատաջարկութիւններով, և քրիստոնէից պաշտպան դարձնել խոյամութեամբ զօրա-ցած ազգերուն դէմ, մինչև իսկ Թաթար-ները քրիստոնէութեան աշակերտել: Վասն զի առկուին Թաթարները քաղաքական և կրօնական անորոշ վիճակ մը ունէին, իրենց երկրին մէջ ունեցած սովորութիւննին և հաւատքնին հեռաչեաւէ փոխակերպուելու վրայ էին իսլամներու և քրիստոնեաներու հետ ունեցած շփումներով, բայց դեռ որոշ կէտի վրայ կայացած չէին: Կիրակոս պատ-միչ, որ իրենց հետ կենակից եղաւ և մօտէն տեսաւ անոնց նկարագիրը (§ 1114), հե-տաքրքրական տեղեկութիւններ կու տայ ա-նոնց վրայ (ԿԻՐ. 147-150), և գլխաւորաբար անոնց կրօնքին մասին կը գրէ, թէ դուրս ինչ ու հայր ան նոռա կամ երկրագործուն, որոց ոտեղ ընտանն Աստուծոյ յէշէին յանձնայն էրս, որոց թէ չլէին Աստուծոյ փոհանային, կամ թէ ըսյլ ոճ Աստուած խոշէին, մէջ ու թէրեմ և ու իւթեանդ եսս (ԿԻՐ. 148), տանցէ խօշէին ընտան Աստուծոյ՝ Թանկրէ (ԿԻՐ. 149): Հեթում իր փափաքած այցելութեան իբր սկզբնաւորու-թիւն որոշեց նախ գրկել իր եղբայր Սմբատ Գունդստաբլը, ապարապետ պատմիչը, որուն ուղևորութիւնը թէպէտ 697=1248ին կը կարդանք (ՍՄԲ. 124), այլ օրինակներու և

ժամանակագրութեան ուղղութեամբ 1247ին եղած կ'ընդունուի (ՄԻԱ. 554), և ըստ այսմ յարմար կու գայ ըսել, թէ կաթողիկոսին պատուիրակը և թագաւորին դեսպանը միա-սին մեկնեցան Կիլիկիայէ, Արևելք երթալու համար, Թէոդոս մինչև Հայաստան, և Սմբ-բատ մինչև ներքին Ասիական, մեծ խանե-րուն մայրաքաղաքը, ուսկից ուղղած է Սմբատ՝ Կիպրոսի թագաւոր Հուկոն Գ'ի 1248ին գրած նամակը (ՄԻԱ. 554):

**1126.** Կոստանդին կաթողիկոսի տաւն-ձրնն մտադրութեան առարկայ եղաւ Ար-տազու Ս. Թադէոս վան-քը, որ է այժմեան Մա-կուի վանքը, Հայոց Առա-ջին Լուսաւորիչին չիրիմը,

ՅՈՎՍԷՓ ԱՐՏԱԶԵՑԻ

որ միշտ նուիրական եղած էր Հայերուն, և անտարբեր չէր կրնար ըլլալ Հայոց հայրա-պետին, մանաւանդ որ յետ տերանցն որ ի Թարսոնոյ և ի հնէէն Վ.րոց, յորմէ ժամանակէ ան-բնակ էր ի մարդոյ և ամայի: Վանականի աշա-կերտութենէն Յովսէփ Արտազեցի վարդա-պետը, ձեռնարկած էր վերստին շէնցնել նոյն վանքը, որ չորս մեծ աթոռներէն մէկը, կամ նոյն իսկ չորսերուն առաջինն էր (§ 930), և ամէն կողմէ եկած օգնութիւններ-րուն մէջ գլխաւոր տեղը կը գրաւէր Հայոց կաթողիկոսին նպաստը: Կոստանդին ոչ միայն յլեց ոսկի յորմէ ի չնորհել գործեն, այլ և չրջաբերական գիր ալ յղեց նպաստներ հա-ւաքելու, վիճակն ալ ընդարձակեց, դպրոցաց գաւառս և զգեստս անոր թեմ նշանակելով: Հարկաւ այդ ամէն կարգադրութիւններ Թէո-դոս պատուիրակին ձեռքով հաղորդուեցան: Յովսէփ վարդապետ այդ պաշտպանութիւն-ներով քաջալերուած, համարձակեցաւ ան-ձամբ ալ ներկայանալ Թաթարաց Անգուն զօրավարին, որոյ ելենտն յառաջս ամբողջով հաւղ էր վանքին, և ամէն տեսակ դիւրութիւն ստանալով, անշուշտ շնորհիւ Սմբատի դես-պանութեան ազդած նպաստաւոր տպաւո-րութեան, կրցաւ վանքը շինել, եկեղեցին օծել, հանդիսաւոր նաւակատիք կատարել, միաբանութիւն հաստատել, կրօնաւոր թռչոնս ժողովել, և Արտազի աթոռը նախկին պայ-ծառութեան վերադարձնել: Անգուն զօրա-վար, այր Բաբոր, ու խաղաղութիւններն ալ կը քաջալերէր (ԿԻՐ. 474), և կը ներէր

անէրնէ՛ւ քու ախպառոց, ընդ մէջ վէրոյ խուլոց, հրամայելով մ՛ ըտ ըլլէլ և նէղէլ։ Սուրբ առաքելոյն գերեզմանէն կատարուած բժշկութեան շնորհիւ, Թաթարներ անգամ ընծայս մատուցանէին, և մինչեւ իսկ կը գանուէին որ գային և մերձէին շուրտերը և շտորէրը խորհանց (ԿԻՐ. 175), զի օտար ազգերու մէջ շատ ընդարձակուած է մկրտութեան վրայ հաւատքը, իբրեւ աղայոց վաղամեռիկ չըլլալուն զօրաւոր միջոց մը։ Յովսէփ Արտազեցիի ձեռնարկը և Բարձրբերդցիին հոգածութիւնը յատուկ յիշատակութեան արժանի էին, զի յաւաջիկային պիտի տեսնենք թէ Արտազու աթոռը նշանաւոր դեր ունեցած է ազգային եկեղեցւոյ գործառնութեանց մէջ։

**1127.** Պատմութեանց մէջ այնպիսի մասնաւոր դիպուածներ կան, որ թէպէտ ընդհանուր եկեղեցւոյ հետ կապ չունին, այլ մեծապէս կը նպաստեն դարուն հոգին ու նկարագիրը

ԴԱՒԻԹ ՄԱՐԵՑԻ

կշռելու. պատմութիւնը պէտք չէ անտես ընէ այդ եղելութիւններն ալ։ Այն տեսակէն է Դաւիթ Մարեցի մոլորեցուցիչին պատահարը (ԿԻՐ. 182-185)։ Մար գիւղի մէջ ջաղացպան մըն էր Դաւիթ, Գեղամայ լճին եզերքը, և Հանգաբերդի մօտ ջրաղաց ունէր, և հագիւ թէ չքաւոր և անանկ կերպով կրնար պահել իւր կինն ու զաւակները։ Օրին մէկը իբրեւ թէ Քրիստոս իրեն երեւցած և հրամայած ըլլայ, ճգնաւոր կը դառնայ, մազաւորները դարձի բերելու և բժշկութիւններ կատարելու իշխանութեամբ։ Գիւղին ձիթահանքին գերանը կը հանէ, և բարձրաբերձ խաչ մը կը կազմէ, քարոզութեան կը սկսի, հրաշագործի հռչակ կը հանէ, խաչին առջեւ մատաղներ կը սկսի կտրել տալ, որոնք իրեն կը մնային, և միւս կողմէն մատաղի ոսկորներէն և խաչին տաշեղներէն կտորներ և կորեկի հատեր կը բաշխէր, իբրեւ նշխարս օրհնութեան, և անոնց փախարէն շատ նուէրներ կ՚ընդունէր ոչով և օրհնութեամբ, շարակամ և ողորմա (ԿԻՐ. 184)։ Իւր բժշկութեանց համբաւը այնպէս զօրացաւ, որ մինչեւ իսկ երկրածնէ ենին և յարեցան է նա, ընդէջ և ըստ օրհնութեան ըստ քա, և գիմողներու բազմութիւնը գիւղին մէջ տեղ չգտնուելէն, շրջակայ լեռներ ու դաշտեր բնակութիւն դարձած էին, ուր ամառնային էր ժամանքն, և հոն ամէն տեսակ խառնակութիւններ համարձակ կը գործուէին, և այս հրապոյրը եւս աւելի կը շատցնէր բազմութիւնը։ Բժշկութեան տարօրինակ կերպեր ալ ունէր, դիւահարները հատ բիրով անխնայաբար կը ծեծէր, կամ աքցով վիզին վրայ կը կոխէր, հաշմանդամները խաղալ ու պարել կը ստիպէր, անդամալոյծները ձեռքերէն ու ոտքերէն չորս հոգիներու քաշկռտել կու տար, և այլ նմանօրինակ կերպեր, որոց մէջ նոյն տեղ մեռնողներ ալ կ՚ըլլային, և այն ատեն սովոր էր ըսել թէ ոա վաղուց էր մեռել, և այն որ ըղջացանէր ըստ՝ փէտն էր (ԿԻՐ. 183), և այսպէս կը հաւատացնէր։ Իրեն պայմաններն էին, ըէրէ-ըաԲրէ օրն գահէցէք, յէշոցէ մ՛ տայէ, էկայէ և համբուրեցէք զխա, և Բողէաւ լէցէն մէջ յէր և ադ- քէն յէր մընչէ յետԲն ագէ (ԿԻՐ. 182), և կամ, էկայէ համբուրեցէք զխա և զէն էմ, և էրԲայէ, և այլ մ՛ էրէնէէ (ԿԻՐ. 183)։ Մարի ամբոխը և գայթակղութիւնը չէր կրնար մաղդութիւն չչարժել, և առաջին Վանականն վարդապետը եղաւ որ Խորանաշատէն ձայն բարձրացուց թէ պէտք է վերջ տալ այդ գայթակղութեան և բանադրեց Մարեցիէն տաշեղներ կամ կորեկներ առնողները։ Նոյն իմաստով գրեցին Համազասպ Հաղբատի եպիսկոպոսը, և ինքն Կիրակոս Գետիկի աշակերտը։ Ասոր վրայ երկու անձեր, Գրիգորիս Դադեվանքի եպիսկոպոսը և Վարդան Յօժարորդիք մականուանեալ վարդապետը, որոց վիճակին մէջ կը մնար Մար գիւղը, խաչով և աւետարանով և պաշտօնէից և հաւատացելոց բազմութեամբ գիւղը եկան, նախ գիշերապաշտօն ըրին, յետոյ Դաւիթը հարցափորձեցին, վերջէն անոր խաչը վար առնելու ձեռնարկեցին, և դէմ դնող գիւղացիները զարկեցին, զզջացողները արձակեցին, և Դաւիթ Մարեցին ալ մէկտեղ առնելով դարձան։ Ասոր վրայ Գառնեցիներէն ոմանք Դաւիթը ուզեցին՝ իբր իրենց հին գիւղացին, և խոստացան զայն զգուշութեամբ պահել, զի մ՛ այլ մոլորեցուսցէ զժողովս, և այսպէս փակուեցաւ Մարի մոլորեցուցիչին միջադէպը, զոր ի դէպ է դնել 1249 տարւոյ ամառնային միջոցին, Վանականի մահուընէ քիչ առաջ։

ՀՈԳԻՈՅՆ ՍՐԲՈՅ ԽՆԴԻՐԸ

**1128**. *Կիլիկիոյ առժամեայ հանդարտութիւնը, և ապագայ ապահովութեան համար Արևմուտքի հետ մշակուած յարաբերութիւնները, նորէն մէջտեղ բերին եկեղեցական միաբանութեան բանակցութիւնները, որք անհրաժեշտաբար կը նորոգուէին քանի անգամ որ Հայեր պէտք կը զգային Արևմուտքի քրիստոնեաները իրենց թևթիկունք ընել, Արևելքի սպառնալիքներուն դէմ։ Անգամ մըն ալ նորոգուեցան այդ շարժումները, և անոր առիթ ընծայեցին Հոգւոյն Սրբոյ մասին Լատիններուն և Յոյներուն մէջ յուզուած վէճերը։ Կոստանդնուպոլսոյ սուրբ ժողովին հանգանակին մէջ Հոգւոյն Սրբոյ համար ելող ի Հօրէ, կամ բղխէ ի Հօրէ բացատրութիւնը ընդունուած էր, համաձայն աւետարանին* (ՅՈՀ. ԺԵ. 26), *որուն վրայ վերջերը Լատիններ և յՈրդւոյ յաւելուածը կցեր էին, և Յոյներ այդ մասին զիրենք կը մեղադրէին, և այս կէտը երկու եկեղեցիներուն բաժանման առիթ ալ յուզուած էր։ Նոյն խնդիրը անգամ մըն ալ նորոգուեցաւ այս միջոցներուն, և Իննովկենտիոս Դ պապ Հայ եկեղեցւոյ տեսութիւնն ալ իմանալու համար գրեց Կոստանդին կաթողիկոսին և Հեթում թագաւորին* (ԿԻՐ. 186)։ *Իննովկենտիոսի առաջին նամակը կը դրուի 1248ին, և յատուկ պատգամաւոր մըն ալ կը յիշուի Տիմանջ անունով* (ՍԻՍ. 554), *բայց խնդիրը քանի մը տարի երկարած է։ Նոյն միջոցին Յունաց եկեղեցին ալ զանց չէ ըրած Հայ եկեղեցւոյ կարծիքին դիմել, և Մանուէլ պատրիարք Նիկիայէ դիմած է Հայերուն* (ՍԻՍ. 554), *որպէսզի իրենց համախոհ գտնուին այն խնդիրին մէջ։ Կաթողիկոսն և թագաւորն մեծ կարևորութիւն տուին գործին, Սիսի մէջ գումարեցին Կիլիկիոյ մէջ գտնուող և զանազան դաւանութիւններէ եղող քրիստոնեաները, Հայ, Յոյն, Ասորի, Վրացի և Լատին, բայց համամտութիւն չի գոյացաւ, և հարկ սեպեցին Արևելք եղող վարդապետական կեդրոններուն և հռչակաւոր մեծ վարդապետներուն դիմել, և անոնց կարծիքն ալ առնել։ Յանուանէ կը յիշուին Խորանաշատի Վանականը և Արտազի Յովսէփը, և որովհետև և առ այլ ալ կ'աւելցուի* (ԿԻՐ. 187), *ի դէպ է կայենի Վարդանը և Գետիկի Կիրակոսը ևս դնել նոյն շարքին մէջ, քանի որ Վարդան ալ* (ՎԱՐ. 148), *Կիրակոս ալ* (ԿԻՐ. 189), *կը փութան իրենց կարծիքը յայտնել նոյն խնդիրին մասին։ Կիրակոս մանաւանդ երկարօրէն կը գրէ, նախապէս զանազան վկայութիւններ կուտալով* (ԿԻՐ. 187-189), *յետոյ Խոստովանութիւն հաւատոյ ուղղափառաց մակագրութեամբ գրուած մը յառաջ բերելով* (ԿԻՐ. 189-193), *որ իր իսկ գրութիւնը կ'երևի, և վերջէն Վանական վարդապետի Թուղթ պատասխանեան գրուածը նոյնութեամբ արձանագրելով* (ԿԻՐ. 193-197)։

ԴԱՒԱՆԱԿԱՆ ԳՐՈՒԱԾ ՄԸ

**1129**. *Այս տեղ պէտք կը կարծենք յառաջ բերել Տիմանջ Լեհոնի կամ պապական նուիրակին պաշտօնին մասին գրութիւն մը, զոր կը գտնենք հին հաւաքածոյի մէջ* (ԹՂԹ. 503), *Վարդանէ պատրաստուած, և Կոստանդին կաթողիկոսի կողմէ Հեթումի ղրկուած, իբրև պատասխանի Թղթոյն որ ի գահէն Հռոմայ Եկեղեցւոյ Թագաւորն Հայոց Հեթում* (ԹՂԹ. 504-508), *որ Տիմանջի ձեռքով բերուած կ'ըսուի 1248ին* (ԹՂԹ. 503). *իբրև հիմնագիր միաբանութեան։ Նամակին սկիզբը հեգնաբար կը յիշուի, թէ պապը նուիրակ յղած է քննել զմեզ, այսինքն հաւատքի բերել, մինչ 1248 տարիներ են կ'ըսէ ծննդենէն մերոյ ի Տեառնէ, այսինքն քրիստոնէութիւն ընդունելնուս։ Այդ տարեթիւը գործածական Քրիստոսի թուականը պիտի ըլլայ, և այս պատճառով հարկ զգացինք Տիմանջի գալուն ՈՂԵ թուականը* (ԹՂԹ. 505) *ՈՂԷ կարդալ, և 1248ին Կիլիկիա եկած և պապին գիրը բերած ըսել։ Պապական նամակին մասին համառձակ կը յայտարարուի, թէ յայս գիրս գտաւ հնգետասան սխալ և անընդունելի բան, որոնք կարգաւ յառաջ կը բերուին և կը հերքուին։ Այս 15 կէտերն են, 1. Հռոմայ աթոռն միայն առնէ իշխանութիւն կապելոյ և արձակելոյ։ 2. Հոգին ի Հօրէ և յՈրդւոյ բղխէ։ 3. Երկու բնութիւն են ի մարդն։ 4. Մէջ նոր օրէնսդրութեան Հոգին հանապազօր։ 5. Մարիամ կին և կոյս է ծնեալ, և ոչ երբեք Աստուածածին է յղեալ։ 6. Թէ Բանն եղև հաւասար Հօր։ 7. Թէ Սուրբ մարդ որով ծնող է թոն ըղձայր։ 8. Երկու բնութիւն և երկու կամք*

Քրիստոսի։ 9. Քրիստոսի չարչարանքն միայն եղան է փրկելոց։ 10. Յետ յարութեան առաւել փառաւորեցաւ մարմինն Տեառն։ 11. Քահանայն մկրտէ և եպիսկոպոսն դրոշմէ։ 12. Մատուցեալ են յեօթն քահանայագործութիւնսն ըմբռնան օրհնէն։ 13. Զերրորդ և զչորրորդ ամուսնաւորացն օրհնութիւն ոչ տալ։ 14. *Գրեր են յառաջ քան զօրն դատաստանի* առնուլ զհոգի արդարոց և անօրէնաց մահուանցն մտանել ի գեհեն։ 15. Որք ընդ հրեշտակս և որք ի գեհենն մնալս փառաւորին (ԹՂԹ.504-508)։ *Մեր նպատակը չէ այդ կէտերը քննել, զորս միայն իբր տեղեկութիւն քաղեցինք, այլ բաւական կը սեպենք դիտել տալ, թէ որչափ հեռու են կաթողիկեան ալ և վարդապետեան ալ համեմատութեան վարդապետութենէ, և թէ ինչպէս կը հերքեն այն կէտերը, որք Հռոմէ պահանջուեր են, իբրև էական դաւանութեան կէտեր։ Գիրին մէջ ըսուած է թէ այս վարդապետութիւններ ոչ Պետրոսի են, ոչ Սեղբեստրոսի, ոչ Կեղեստինոսի, և ոչ Յուլիոսի, զորս Հայոց եկեղեցին ուղղափառ կ'ընդունի, այլ թէ ոչ, կ'ըսեն,* Ղերբեանց արտաքսեալ առաքելոյն խոկէ ընդունիմք։ *Եթէ, կը յարեն, Հայերու վրայ գութ ու սէր ունին, ահա* վկայարանք և տաճարք են Հայոց յԵրուսաղէմ է մեր, և կան որ աւեր են, և կան որ ի ծառայութեան. Թէ կամին ընդ Հայոց, թող երթան աղօթեն (ԹՂԹ. 509)։ *Ռամկօրէն լեզուն պէտք չէ միտքերը շփոթէ, զի գրուածը Հեթումի ուղղուած մասնաւոր գիր մըն է, և ոչ պաշտօնական վաւերագիր։ Իսկ մեր տեսութեամբ մասնաւոր գրուածներ աւելի զօրաւոր են իւրաքանչիւրին ներքին համոզում մը իմանալու համար, քան պաշտօնական գրութիւններ։*

**1130.** *Միւրազգի համեմատութեանց համաձայն կը յայտարարեն այդ առթիւ, թէ Հայեր ըստ ամենայնի համակերպեցան Հռոմի վարդապետութեան, և ընդունեցան* Եւ յՈրդւոյ *յաւելուածը հանգանակին մէջ* (ՁԱՄ. Գ. 236)։ *Սակայն բոլորովին տարբեր է Հայերուն տեսութիւնը, ինչպէս քննական հետազօտութեանց արդիւնքը կը ցուցնէ։ Բոլոր խնդիրը աւետարանի երկու խօսքերը.* Որ ի Հօրէ ելանէ (ՅՈՀ. ԺԵ. 26), *և* Յինմէ առնէ առնու (ՅՈՀ. ԺԶ. 15), *իրարու հետ կապակցելու վրայ է։*

ՀԱՅՈՑ ԿԱՐԾԻՔԸ

*Ասկէ կը ծագին,* ելանել, ծնանել, բղխել, *և* առնուլ *ըսուած առնչութիւններուն տարբերութիւնները։ Ելանել ընդհանուր իմաստով կ'առնուի, իսկ* ծնանել՝ *Որդւոյ առ Հայր,* բղխել՝ *Հոգւոյն առ Հայր, և* առնուլ՝ *Հոգւոյն առ Որդի՝ առնչութիւններուն կը պատշաճեցուին, քանի որ Երրորդութեան գաղափարը բացատրելու համար պէտք է իւրաքանչիւր առնչութեան առանձնայատկութիւնը ճշդել, և երկու նոյնանմաններ չընդունիլ, կամ որ նոյն է, առնչութիւնները չշփոթել։ Դարձեալ պէտք է* եռաթեան *խնդիրը տարբերել* եղման *խնդիրէն, զի եթէ երից անձանց մէջ էութեան տարբերութիւն դնել անհնարին է, եղման տարբերութիւն դնել անհրաժեշտ է, առանց որոյ երեքանձնեայ դրութիւնը կը ջնջուէր։ Ըստ այսմ Լուսաւորիչի հռչակաւոր դարձած բացատրութիւնը,* Հոգի ի նոցանց ի նոյն (ԱԳԹ. 181), *պարզապէս էութեան մասին կ'իմացուի, կամ առաւելն ընդհանուր եղման իմաստն ունի, քանի որ նոյն Լուսաւորիչ առէպ կը կրկնէ, թէ Հայրն է* բղխումն Հոգւոյն Սրբոյ (ՅԱՃ. 3)։ *Ըստ այսմ շատ տարբեր են* եռաթեան, *և* ելումն, *և* բղխումն, *և Հայերն ալ կը գտնեն այդ բացատրութիւնները եկեղեցական գրութեանց մէջ, և երբ կը դաւանին Հոգին* բղխումն Հօր անժամանակ, առաւ յՈրդւոյ անճառաբար (ՇԱՐ. 393), *երբեք* բղխումն ի Հօրէ և յՈրդւոյ *չեն իմանար։ Այդ տարբերութիւնը Արևելեան վարդապետներուն գրութեանց մէջ ալ շեշտուած կը գտնենք։ Կիւրակոս կը գրէ.* Համարձակ արժան է խորհել զՀոգին ի Հօրէ ելեալ և յՈրդւոյ երևեալ (ԿԻՐ. 189), *և Հոգին ճանչնալ,* բղխումն ի Հօրէ և երևումն յՈրդւոյ (ԿԻՐ. 190)։ *Վանական ալ երբ Հոգւոյն աստուածութիւնը կը պաշտպանէ, Հօր և Որդւոյ հետ առնչութիւնները կը տարբերէ, և Հոգւոյն համառօտ կերպով ի Հօրէ և յՈրդւոյ ըղխումը չհաստատեր, և իր միտքը կը պարզէ սա խօսքերով.* Հայր անծին ասէ՝ զի ոչ յումեքէ, և Որդին ծնեալ՝ զի է Հօրէ, և Հոգի ոչ ասէ Որդի կամ ծնեալ՝ զի մի երկու եղբարք թուեսցին, և ոչ երկրորդ ընդ Որդւոյ՝ զի մի դասաւոր կարծեսցի, և ոչ յՈրդւոյ միայն՝ զի մի թոռն համարեսցի (ԿԻՐ. 196)։ *Հետևաբար Հայերը երբ Հոգւոյն համար յՈրդւոյ առնչութիւն մը կ'ընդունին, և ըստ այնմ իրենց միտքը կը*

յայտնին Լատիններէն եկած հարցումին մասին, երբեք է Հօրէ և յՈրդւոյ Բղխումը՝ ընդունած չէին ըլլար, եւս առաւել և յՈրդւոյ յաւիտենականին հաւանած չէին ըլլար, և Լատիններուն համակերպած չեն կրնար ըսուիլ։ Այլ միջասահման բացատրութեամբ, և ճարտար դարձուածով մը Լատիններուն հակառակած երեւնալ չեն ուզեր, որպէս զի բարեկամական յարաբերութիւնները չխանգարեն։ Միւս կողմէն Յոյներէն ալ զատուած չեն ըլլար, քանի որ ոչ և յՈրդւոյ յաւիտենականին հաւանած, և ոչ ալ զայն հանգանակին մէջ ընդունած կ'ըլլան։ Վարդան Աննեցին [illegible] կ'ըսէ (ՎԱՐ. 148), և Հռոմի պատասխան տրուած ըլլալը չգիտեր, իսկ Կիրակոս երբ կը գրէ, թէ [illegible] Աստուծոյ (ԿԻՐ. 189), իրենց կողմէ կաթողիկոսին գրուած պատասխանը կ'իմանայ, և ոչ կաթողիկոսին կողմէ Հռոմի տրուած պատասխանը, որ կ'երեւի բնաւ տրուած չէ, զի ոչ մեր պատմագիրք կը յիշեն, և ոչ պապական գրութեանց կարգին կը գտնուի, և ոչ ալ Մխիթար կաթողիկոս՝ պատասխան տրուած ըլլալը կը գրէ (ՁԱՄ. Գ. 239), ուստի Նորերուն [illegible] խօսքը (ՁԱՄ. Գ. 239), կամ [illegible] ըսելը (ՄՈՎ. 217), պատմական հաստատութիւն չունին։

**ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԿԱՑՈՒԹԻՒՆ**

**1131.** Սմբատի Թաթարներու մօտ երթալն ու դառնալը (§ 1125), իր երկու տարի տեւեց, ինչպէս ինքն ալ կը նշանակէ (ՍՄԲ. 124), և հազիւ 1250'ին կրցաւ եղբօրը Հեթում թագաւորին մօտ դառնալ։ Կիւրք խան սիրով ու պատուով ընդունեցաւ Հայոց թագաւորին դեսպանը, [illegible] մեծարեց, և հաւանեցաւ որ Հայերուն յանձնուին այն քաղաքները, որոնք երբեմն իրենց էին և վերջերս անոնց ձեռքէն առնուած էին։ Իսկ գլխաւոր հաճութիւնն եղաւ, որ հաւանեցաւ Հայոց թագաւորին անձամբ իրեն գալուն, և քրիստոնէից գործերուն մասին բանակցելուն։ Սակայն Կիւրք խան երկար չապրեցաւ և մեռաւ նոյն տարին, որ Սմբատ Կիլիկիա կը հասնէր, և իրեն յաջորդեց Մանկու խան, Թուլիի որդի և Ճինկիզի թոռ, որ ամէնէն փառաւորն ու նշանաւորն եղաւ Թաթար խաներուն մէջ, թէպէտ 9 տարի միայն իշխանութիւն վարեց, 1250'է մինչեւ 1259։ Նոյն 1250 տարին էր որ Լուդովիկոս Թ Սուրբն՝ Գաղղիոյ թագաւորը, Պաղեստին կ'անցնէր։ Լատիններ նոր ընդհանուր ժողով գումարած էին Գաղղիոյ Լուգդուն (Lyon) քաղաքը 1245'ին, որ է իրենց ԺԳ տիեզերականը, ուր որոշուած էր նոր խաչակրութիւն մը եւս կազմել։ Բայց հազիւ 1248'ին Լուդովիկոս թագաւոր՝ եօթներորդ խաչակրութեան գլուխ անցած ուղղակի Եգիպտոս արշաւած էր, և առջի բերան յաջողութիւններ ալ ունեցած էր՝ Մանսուրայի և Տամիաթի պատերազմներուն մէջ, բայց վերջէն ձախողելով ինքն ալ գերի ինկած, և հազիւ գրաւած տեղերը թողլով և ծանր փրկանք վճարելով, ազատութիւն ստացած, և 1250'ին Պաղեստին էր անցած, խորհելով Կեսարիոյ, Յոպպէի, Սիդոնի, Պտղոմայիսի և Անտիոքի լատին իշխանութիւններուն ոյժերը միացնելով Երուսաղէմի գրաւման աշխատիլ։ Այդ առթիւ Հայոց թագաւորութեան հետ ալ յարաբերութեան մտաւ, թէպէտ Հայեր Լուգդունի ժողովին մասնակցութիւն ունեցած չէին։ Անտիոքացիներու և Հայերու մէջ տիրող հակառակութիւնն ալ ջանաց վերջացնել իր միջնորդութեամբ (ՍԻՍ. 554), որպէսզի կարենայ Հայոց ոյժերն ալ միացնել իր նպատակին, որ էր Երուսաղէմի առումը։ Սակայն փորձերու իսկ չհամակերպեցաւ, թէպէտ և մինչեւ 1254 Պաղեստինի և Ասորիքի մէջ մնաց։ Շատ հաւանական է, որ Լատիններուն Հայերէ սպասած օգնութեան պարագան էր, որ կրօնական խնդիրները լռեցուց, և Հոգւոյն Սրբոյ խնդիրը մոռացութեան մատնուեցաւ, և Հայերու հարկ չեղաւ պաշտօնապէս հաւատոյ գիր գրել Հռոմի պապութեան (§ 1130)։ Հեթումի յաջողութեանց կարգին պէտք է անցընել Կոստանդին Լամբրոնացիին ձեռքէն ալ ազատիլը, որ միանգամ (§ 1109), և երկիցս (§ 1116) Հայոց թագաւորութեան դէմ Իկոնիոնի սուլտաններուն հետ միանալէ ետքը, նորէն ու նորէն կրկնեց իր թշնամութիւնները, չարունակ Սելճուքներու օգնութեան դիմելով։ Սակայն Հեթում կրցաւ միշտ զէնքի զօրութեամբ

*անոր ջանքերը ապարդիւն հանել, և Լամբրոնացի իշխանը եօթն անգամ հարամ է նմանէ, մինչև որ այլ ոչ էշխէր համարձակել յաղ կամ յանեալ* (ԿԻՐ. 158)։ *Սակայն Հեթում վստահ չէր կրնար ըլլալ անոր վրայ, և վերջապէս* 1250'*ին զայն սպաննել տուաւ* (ՍԻՍ. 554) *իւր բերդին մէջ, որպէս զի միանգամ ընդ միշտ երկիրն ալ խաղաղի։ Նոյն միջոցին կատարուած եղելութեանց կարգին յիշենք Զապէլ թագուհիի մահը, զոր արդէն պատմեցինք* (§ 1108), *և Ասորւոց կաթողիկոսական աթոռին Հռոմկլայի մէջ հաստատութիւնը, Հայոց թագաւորութեան պաշտպանութիւնը վայելելու համար, որուն իբր առհաւատչեայ Իգնատիոս կաթողիկոս* 1253'*ին մեռած ատեն իւր ջօրին ու դրամի գումար մը կը կտակէր Հեթումի* (ՍԻՍ. 554)։

**1132.** *Վերջապէս Հեթում պիտի ձեռնարկէր իւր վաղուց մտադրած ուղևորութեան, և Թաթար խանին հետ ուղղակի բանակցութեամբ, թէ՛ իւր թագաւորութեան և թէ՛ ընդհանուր Հայոց համար ապահովութիւն մը ձեռք բերել։ Իրաւ մեռած էր Քիուք, որ հաւանութիւնը տուած էր, սակայն անկէ աւելի կը գովուէր Մանկու իւր յաջորդը, և Հեթում ճամբայ չելած, պէտք տեսած էր Մանկուի միտքն ալ շօշափել և վստահութիւն գոյացնել, զոր պատմութիւնը զանց ըրած է յայտնապէս գրել, սակայն կը քաղուի Բարսեղ քահանային Բաթու զօրավարին մօտ դեսպան երթալէն* (ԿԻՐ. 213), *և Մանկու խանի կողմէ Բաթուի տրուած հրամանէն, Հեթումի ճամբուն ապահովութեան հսկելու* (ԿԻՐ. 211)։ *Սմբատ թագաւորեղբօր և Հեթում թագաւորին ուղևորութեանց մէջտեղը* 1251'*ին* (ՕՐԲ. Բ. 161) *կ'իյնայ Սմբատ Օրբելեանի ալ Մանկու խանի մօտ երթալը, զոր երկար կը պատմէ Օրբելեան* (ՕՐԲ. Բ. 151-158)։ *Սմբատ՝ վրացի Օրբելեանց կատարածէն ազատած Լիպարիտի ցեղէն էր, որ Հայոց հետ խնամութեամբ խառնուելով, Հայ սերունդ ունեցաւ, և Լիպարիտի թոռ Լիպարիտի զաւակներն էին՝ Էլիկում, Սմբատ, Իւանէ, Փախրադաւլ և Տարսայիճ* (ՉԱՄ. Գ. 218)։ *Էլիկում պատերազմի մէջ մեռած էր, թերևս ջեջակաւր* (ՕՐԲ. Բ. 150), *միւս եղբայրներն ալ հալածուած էին, բայց Սմբատի յաջողեցաւ Մանկուի հաճոյանալ, որուն մօտ մնաց ամս երեք* (ՕՐԲ. Բ. 155), *և պաշտպանութիւն ստանալով եկաւ և իւր իշխանութեան մէջ հաստատուեցաւ* (ՕՐԲ. Բ. 158)։ *Սմբատ Օրբելեանի յաջողութիւնը կրնայ քաջալերած ըլլալ Հեթումը այցելութեան նպատակին մէջ։ Հեթումի ուղևորութեան թուականը պէտք է քաղենք ինչ ինչ ակնարկներէ, որոց գլխաւորն է, թէ Մանկուէ մեկնելէն 8 ամիս ետքը Հայաստան դարձաւ* 1255'*ին* (ԿԻՐ. 217), *իսկ Մանկուէ մեկնած էր նախընթաց* 1254 *նոյեմբեր* 1'*ին* (ԿԻՐ. 213), *որով Հայաստան հասած կ'ըլլայ* 1254 *յուլիսի սկիզբը, և 8 ամիս ալ երթալուն դնելով,* 1254 *մարտէն առաջ եղած պիտի ըլլայ Կիլիկիայէ մեկնիլը։ Հայաստան դառնալէն ետքն ալ միջոց մը նորէն հոն մնաց, և* 1256 *յունիս* 5'*ին կը դրուի Կիլիկիա հասնիլը* (ՍԻՍ. 554)։ *Ըստ այսմ երկու տարի և աւելի կ'ըլլայ թագաւորին բացակայութիւնը, և չափազանցեալ կը կարծենք երեք ու կէս ամաց ժամանակով* (ՀԵԹ. 44), *կամ ամս չորս* (ՎԱՀ. 220) *երկարել զայն։ Այդ միջոցին անշուշտ Կոստանդին թագաւորահայր պէտք էր առանձնէր երկրին կառավարութիւնը, սպարապետ Սմբատ և իշխանապետ Լևոն որդիներն ալ* (§ 1106) *իրենց պաշտօնները կը շարունակէին։ Իսկ պատմիչը Լևոնն ու Թորոսը կը յիշէ, թէ Հեթում եթող փոխանակ իւր, Կոստանդին թագաւորահօր հետ, որ ծեր գոլով մենակ չէր կրնար գործել, մինչ թագուհին Զապէլ ալ փոխեալ էր առ Քրիստոս* (ԿԻՐ. 212)։ *Ըստ այսմ պիտի ըսուի թէ արքայորդիներն եղան թագաւորութեան պաշտօնական խնամակալները իրենց մեծ հօր հետ։ Լևոն 18 տարեկան էր արդէն և Թորոս ալ քիչ պակաս, և կրնային պաշտօնական դեր վարել։ Կոստանդին կաթողիկոս ալ հարկաւ իւր մասնակցութիւնը ունեցած պիտի ըլլայ այդ խնամակալութեան մէջ, ինչպէս երբեմն Յովհաննէս կաթողիկոս առաջին խնամակալութեան ատեն* (§ 1096)։ *Իսկ Հեթումի ուղեկիցները քիչ եղած չեն, զի իշխանք յոլովք կը յիշուին առանց անունի* (ԿԻՐ. 213)։ *Եկեղեցականներէն իրեն հետ եղած են Սանահնոյ եպիսկոպոս, Մխիթար վարդապետ*

*Սկեւռացի, Բարսեղ քահանայ, Թորոս կուսակրօն քահանայ, Կարապետ դրանիրէց արքային* (ԿԻՐ. 212), *և Յակոբ վարդապետ մըն ալ* (ԿԻՐ. 216), *զոր Յակոբ Կլայեցիի հետ նոյնացնելու չենք։ Ասոնք որչափ ալ իրր գործունեայ անձեր ընտրուած ըլլան, սակայն անոնց մականունը և ինքնութիւնը անծանօթ կը մնայ մեզի, Սկեւռացի Մխիթարէն զատ։ Կիրակոս Գանձակեցի պատմիչ, տեղերու և անուններու և օրերու այնչափ մանրամասնութիւններ կու տայ, որ անձամբ Հեթումի ընկերացած ըլլալուն կասկածը կը զարթնու, եթէ ընկերացողներէն մէկուն մօտ մանրամասնօրէն հետաքրքրուած չըսենք։*

**ՈՒՂԵՒՈՐՈՒԼԸ ԵՒ ԴԱՐՁԸ**

**1033.** *Հեթում իւր ուղեւորութեան առաջին մասը յանծանօթս ուզեց ընել և 1254'ին* (ՎԱՐ. 148) *ըսկիզբը, առանց գաւիկն ալ ընելու, որ այն՝ տարի ապրիլ 12'ին կ'իյնար, ճանպայ ելաւ փետրուար 4'ին* (ՁԱՄ. Գ. 248), *գաղտագողի այլակերպեալ գնաց ընդ մէջ Թուրքաց, որոնք տակաւին ոչ հնազանդեալ էին* (ԿԻՐ. 211)*. սուլտանին ընտանիքը Թաթարներու յանձնելուն համար* (§ 1115)*։ Հեթում արագ ընթացքով յաւուրս երկոտասան Սիսէ Կարս հասաւ, Բաչու զօրավարին հետ առաջին տեսութիւն մը ունեցաւ, որուն հետ կանուխ յարաբերութիւն ունեցած էր Իկոնիոնի արշաւանքին առթիւ* (§ 1115), *այլ մեծամեծ ալ գնաց տեսնուեցաւ, և անկէ Վարդենիս գիւղը հանգստացաւ, Արագածի ոտքը, Բուրդ անուն հայազգի իշխանին ապարանքը, որ ամուսնացած էր Մարզպան Մամիկոնեանի դստեր՝ Խորիշահի հետ, ուսկէ ունեցած էր Վաչէ և Հասան որդիները* (ԿԻՐ. 211)*։ Հեթում Վարդենիս սպասեց մինչեւ որ հասնին ինչ ի տանէ իւրմէ ի դէպս ընծայից և պատարագաց* (ԿԻՐ. 212), *զորս չէր կրցած մէկտեղ առնել պատրաստուած ըլլալով ծածկաբար երթալ* (ՀԵԹ. 42), *և զորս հոգացած էին յղել հայր նորա և որդի նորա* (ԿԻՐ. 212)*։ Երբոր ամէն բան պատրաստ եղաւ, ինքն և իւր հետեւորդները Աղուանից աշխարհէն անցնելով, եկան մօրայ Պահակը, Բաթու զօրավարին մօտ, որուն Մանկուի կողմէ յանձնարարութիւն եղած էր, և որուն որդին Սարթախ երկոտասանեայ էր հասակաւ։ Մայիս 13'ին Բաթուին քովէն մեկնեցան, որ է ըսել թէ փետրուար 16'էն մինչեւ մայիս 13 երեք ամիս Հայաստան մնացած էին, մեծագոյն մասը Վարդենիս, և քիչ մըն ալ Բաչուի և Բաթուի մօտ։ Հարկաւ այդ միջոցին Հեթում մօտէն ծանօթացաւ երկրին վիճակին, որպէսզի լաւագոյն կերպով կարենայ միջնորդել։ Բաթուի մօտէն մինչեւ Մանկու խանին ներկայանալին տեւած է չորս ամիս, Այխս և Երթիճ գետերն անցնելով և յայնկոյս ծովուն Կասպից՝ Թաթարիստան երկիրը մտնելով։ Մանկուի ներկայացած են սեպտեմբեր 13'ին զոր իբր թէ Նաւակատեաց խաչ կը յիշէ պատմիչը* (ԿԻՐ. 213), *թէպէտ այն տարին սեպտեմբեր 13'ը կիրակի և Խաչվերացի տօն կ'իյնայ, բայց կ'երեւի թէ այն կողմեր կը տիրէր Զաքարէ Օրբելեանի ուզած ձեւը՝ Խաչվերացը հաստատապէս սեպտեմբեր 14'ին տօնելու* (§ 1082), *կամ թէ Կիրակոս տօնը յիշած ատեն՝ պարզապէս Յայսմաւուրքին կը հետեւի* (ՑԱՍ. Բ. 141)*։ Պէտք է դիտել ևս թէ Կիրակոս հայ և հռոմէական ամսաթիւերը Սարկաւագադիր անշարժ տոմարին կարգով համեմատելու սկսած է այդ եղելութեանց առթիւ, որով Սարկաւագադիր կարգադրութեան կիրառութեան մտած և ընդարձակութիւն ստացած ըլլալը կը հետեւի։ Մանկու խան երեւելի փառօք պատուեալ ընդունեցաւ Հեթումը, որ իւր ընծաները ներկայեց, և մեծարեցաւ ի նմանէ ըստ արժանւոյն, մնաց յօրդուն, այսինքն բանակին մէջ, ինչպէս կը կոչուէին հին ատեններ արեւելեան արքունիքները* (ԲԶՆ. 190), *մնաց աւուրս յիսուն, և ճիշդ սեպտեմբեր 13'էն հաշուելով յաւուրն յիսներորդի, այսինքն ի մի Նոյեմբերի ել ի նմանէ, և ետ դառնալու ճանպան բռնեց։*

**ԽԱՆԻՆ ՇՆՈՐՀՆԵՐԸ**

**1034.** *Հեթումի այցելութեան և ստացած յաջողութեան ուսախոը տարօրինակ վրայցներու առիթ տուած է ժամանակին, և որոց արձագանգ եղած է Հեթում պատմիչ, Հեթում թագաւորին եղբօր Օշինի որդին* (ՍԻՍ. 337), *որ Եւրոպացւոց համար գրելով, չէ քաշուած պարզ վրայցներ ալ խառնել իւր պատմութեան, թէպէտ ինքն այս մասերը իւր*

է տեառն ժողովս լամբ յառաջ կը բերէ (ՀԵԹ. 68), իսկ մենք յառաջ կը բերենք իբր պարզ տեղեկութիւն։ Այդ զրոյցներու համեմատ Հեթում Մանկու խանի հօթը խնդիր կ'առաջարկէ. 1. Մանկու ինքն և բոլոր Թաթարներ քրիստոնեայ ըլլան և մկրտուին. 2. Թաթարներու և Հայերու մէջ մշտնջենաւոր բարեկամութիւն հաստատուի. 3. Հայեր կարենան բոլոր Թաթարաց երկիրներուն մէջ եկեղեցի շինել, և կալուածներէ ու տուրքերէ ազատ ըլլան. 4. Թաթարները Երուսաղէմը ու սուրբ Գերեզմանը Թուրքերէն առնեն և քրիստոնեաներուն տան. 5. Թաթարներ Պաղտատի խալիֆայութիւնը ջնջեն. 6. Թաթարները երբոր պէտք ըլլայ Հայոց թագաւորութեան զէնքով օգնեն. 7. Ինչչափ տեղ ու քաղաք որ Թուրքերը Հայերէն առած են, Թաթարները ետ առնեն և Հայերուն տան (ՀԵԹ. 43)։ Այդ խնդիրներուն մասին Մանկու խան իրեն իշխաններուն հետ խորհրդակցելով պատասխանած կ'ըլլայ, 1. Ինքն քրիստոնէութիւնը կ'ընդունի, և իրենները կը յորդորէ առանց բռնադատութեան. 2. Մշտնջենաւոր բարեկամութիւն կը շնորհէ սիրողական և պաշտպանողական. 3. Կը հաւանի որ քրիստոնեայ եկեղեցիներ և եկեղեցականներ և աշխարհականներ մնան ի շնորհս ազատութեան. 4. Երուսաղէմի առումը և քրիստոնէից դարձումը կը յանձնէ եղբօրը Հուլաւունի. 5. Պաղտատի խալիֆայութիւնը ջնջել կը յանձնէ Բայտոն զօրավարի. 6. Ամէն ձեռնտուութիւն կը խոստանայ Հայերուն. 7. Կը հրամայէ որ ինչ որ Հայոց էր անյապաղ դարձցի նոցա անդրէն։ Ասոր վրայ Մանկու կը մկրտուի, և իրեն հետ տուն նորա, և բազում արք և կանայք պաշտօնեայք և ծառայք (ՀԵԹ. 44)։ Մանկուի քրիստոնեայ ըլլալը ժամանակին տարածուած զրոյց մըն էր, և Լատիններուն մէջ ալ խօսուած է, մինչև իսկ պապական դիւանին մէջ այդ մասին յիշատակներ գտնուիլը կը խօսուի (ԿԱԼ. 387), և կը պատմուի ևս Լուդովիկոս Թ Գաղղիոյ թագաւորին կողմէ այդ առթիւ դեսպանութիւն յղուիլը, գլխաւորութեամբ Գուլիէլմոսի Ռուբրուկեցւոյ և Բարթողիմէոսի Կրեմոնացւոյ, որոնք իրենց ապարդիւն ուղևորութեան տեղեկագիրն ալ մատուցած են 1255'ին։ Սակայն ուելորդ զրոյցներէ մերկացնելով ալ՝ Հեթումի այցելութիւնն իր արդիւնքը ունեցաւ։ Կիրակոս կ'ըսէ, թէ Մանկու տուաւ հրովարտակ նշանաւոր, զի մի ոք իշխեսցէ նեղել զնոսա և զաշխարհս նորա, և ետ գիր ազատութեան եկեղեցեաց ընդ ամենայն տեղիս (ԿԻՐ. 213), Վահրամ ալ կ'ըսէ, թէ Հեթում եկաւ բանիւ սիրոյ և գիր առեալ, ազգ խաժոժ յետոյ դարձեալ, և ըմբռնեալ զաւառս առեալ (ՎԱՀ. 220)։

**ՅՈՒՆԱՑ ՀԵՏ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆ**

**1135.** Հեթումի բացակայութեան միջոցին, Կոստանդին կաթողիկոս ուզեց օգտուիլ Յոյներու հետ բանակցութիւնը նորոգելու և համաձայնութեան մը յանգելու։ Թերևս Հեթում կատարելապէս Լատիններու կողմը վարակուած՝ շատ չէր սիրեր Յոյներու հետ յարաբերութիւնները, որ Կոստանդին Յոյներու հետ բանակցութեան մասին, յերկբայից, Երբ Հեթում գնաց խաղաղութեամբ և դադարեալ է ի Մեծն Հայս, ինչ որ եթէ մէկ կողմէն անվտանգ Կարս հասած ըլլալուն կ'ակնարկէ, միւս կողմանէ ալ շուտով դառնալիք չըլլալը կը նշանակէ։ Բանակցութեան պատուիրակն եղաւ Յակոբ մեծ վարդապետը, այր բանաւոր և իմաստուն, զոր առաքեալ էին յառաջագոյն վասն սիրոյ և միաբանութեան առ թագաւորն Յունաց Յովհաննէս, որ ունէր զկողմանս Ասիոյ։ Արդէն յիշեցինք (§ 1111), առաջին բանակցութիւն մը՝ Նիկիա նստող Յունաց կայսր Յովհաննէս Վատակէսի հետ, նոյն Յովհաննէսն էր տակաւին Նիկիոյ կայսրը, որուն այն անգամ ալ նոյն այս Յակոբ վարդապետը բանագնաց ղրկուած էր։ Յարաբերութեանց կրկնուելուն պատճառը միշտ քաղաքական էր, զի Վատակէս մեծացեալ էր յաշխարհն, և կրնար Կիլիկիոյ թագաւորութեան ալ սպառնալ։ Իսկ Յակոբ վարդապետը անխտիր Կլայեցի, Սսեցի և Տարսոնացի մականուններով կը յիշուի, և մենք առաջինը աւելի գործածական կը գտնենք։ Նմանապէս Գիտնական և Հռետոր մակդիր անունները ալ կը կրէ, որք իր մտաւորական կարողութեան փաստը կը կազմեն։ Յակոբ Սիսէ կամ Հռոմկլայէ Նիկիա գալով Յունաց վարդապետներուն հետ վիճաբանութեան մտաւ, որոց գլուխը կը գտնուէր Մանուէլ պատրիարք։ Գլխաւոր նիւթը

Քաղկեդոնի և բնութեանց խնդիրն էր, որով Յոյներ բամբասէին զմեզ Նեստորեան լինել, կրկնելով միշտ դարերէ իվեր իրենց բերնին ծամուց եղած մեղադրանքը։ Սակայն Յակոբի դժուար չէր բուն հայադաւան վարդապետութիւնը պարզել, և մեկնել ի բնութեան դաւանութեան, Կիւրեղեան և ոչ Նեստորական սկզբունք մը լինելը համոզել։ Պատմիչը կը վկայէ թէ Յակոբ Դիտնական աստուածային բանիւ և գրոց քննութեամբ հաստատեաց զՀայոց ուղիղ հաւատ է ուղիղ և է մաքրութեան ընդ ուղիղ մեր, բայց մենք պիտի չկարենանք գործին վերջնական և հաստատուն լուծում տրուած ըսել։ Վասնզի Յոյներու հակառակութիւնը և եւտիքականութեան կարծեցեալ մեղադրանքը այս անգամ ալ չդադրեցաւ, և Յոյներ դարէդար միշտ նոյն խօսքերը կրկնեցին, պահանջելով ոչ թէ ուղղափառութեան վրայ կանգ առնել, այլ ամէն կերպով իրենց նմանիլ և իրենց հետեւիլ։ Ինչ ալ ըլլայ իսկական վերջաւորութիւնը, գոնէ առժամեայ հանդարտութիւն մը տեղի ունեցած պիտի ըլլայ, վասն զի Յակոբ դարձեալ է նոցանէ պատուով (ԿԻՐ. 212), միեւնոյն գացած տարին, 1254'ին։

**1136.** Հեթում Մանկուի քովէն մեկնած էր 1254 նոյեմբեր 1'ին, և 30 օրէն հասաւ Ղումղուր, զոր ի դէպ է

**ՀԵԹՈՒՄ Ի ՀԱՅԱՍՏԱՆ**

նոյնացնել Գարագորումի հետ, և անկէ ալ դէպ հարաւ-արեւմուտք ուղղուելով և բաւական երկար, և ձմեռնային միջոցին տաժանակիր ուղեւորութեամբ հասաւ Դալաս, Հուլաւունի տեսութեան, որ առեալ էր էր բաժին զնողման, ուր ուսկի էին հայութաթար յարաբերութիւնները (ԿԻՐ. 214), և Մանկու յանձնարարութիւններ ըրած էր Հուլաւունի, ի նպաստ քրիստոնէից (§ 1134)։ Կիրակոս շատ մը գետերու և քաղաքներու անուններ կու տայ, զորս դժուար է նոյնացնել այժմեան անուններու հետ, և տարօրինակ տեսարաններ ալ կը յիշէ նոյն տեղերու մասին, մարդիկ վայրենիք, մերկ և անբանք, մազ առնելով մարմին է բուսեալ, ապէնք կանանց մէջ և երկայն, ձիք վայրենիք, ջորիք մէջ քան զձի, ուղտք վայրենիք՝ երկուս կատակէնս ունելով (ԿԻՐ. 214), որպէսի բաներ միշտ կը պատմուին երբոր նոր երկրի մը վրայ կը խօսուի։ Միջոց մը մնաց Հեթում Հուլաւունի մօտ, ուր հասած պիտի ըլլար 1255'ի սարեկլուխին առեններ, և անոր հետ կարգադրեց բարեկամութեան պայմանները (ՍԻՍ. 554), քանի որ նա էր արեւմուտքի կողմը զանազան ծով է ծովակաւ (ԿԻՐ. 218)։ Անկէ մեկնած առեն ուղղութիւնը է Հետոյս արեւմտից փոխելով Հայաստանի ճանապարհ բռնեց, հանդիպեցաւ Բաթուի որդի Սարթախ զօրավարին, որ երթայր առ Մանկու ղանն, և միշտ յառաջելով ու Երասխը անցնելով մօտ է Սեհեան կամ Սիհոնեան, որ է Սիւնեաց նահանգը, ուր կը մնայր Բաչու զօրավար։ Քառասունէ աւելի աշխարհագրական անուններ կը յիշէ Կիրակոս ճանապարհութեան այդ երկրորդ մասին մէջ, որոց ուղղագրութիւնը ու համեմատութիւնը առեղծուածային աշխատանք մըն է, իսկ հեռաւորութիւններն ալ կատարելապէս չէ յիշած, զի միայն Դիզակէ Սմբղանդ 30 օր, Սիմնայէ Թավրէժ 12 օր, և Թավրէժէ Սիսիան 26 օր կը նշանակէ (ԿԻՐ. 215), իսկ յետ ելանելոյ ի Մանկու ղանէն, մինչև որ եհաս յերկիր Հայոց, յութ ամիսն կատարեց կ'ըսէ, և 1255 թուական կը դնէ (ԿԻՐ. 217), որով նոյեմբեր 1'էն կը հասնինք յուլիս 1'ին։ Անգամ մը Հայաստանի մէջ՝ Հեթում երկար դադար մը կ'ընէ այն տեղ, և կը սկսի իւր հոգածութիւնը տարածել իւր ազգայիններուն, թէ ոչ իբրեւ անոնց թագաւոր, գոնէ այն համարձակութեամբ զոր առացաւ մեծ խանէն, իբրեւ գլուխ և ներկայացուցիչ Հայ քրիստոնէութեան, մանաւանդ թէ բոլանդակ քրիստոնէութեան։ Իրեն հաստատուն բնակավայր ըրաւ նորէն Վարդենիս գիւղը, Քուրդ իշխանին ապարանքը (§ 1133), և ուր թողած էր զուգէ Կուր և Երասխ, որով եկած էր Կիլիկիայէ, վասն զի անկէ անդին կ'երեւի թէ ամէն պէտքերը Թաթարները հոգացին, և անոր առաջնորդեցին իբրեւ մեծ խանին հիւր։ Վարդենիսէն նորէն ճամբայ հանեց Բարսեղ քահանայն կրկին անգամ Բաթուին երթալու, չէ ցուցել նմա զհէրան և զհրաման Մանկու ղանէն, զի և նա ըստ նմին օրինակի ցուցել հրաման՝ իւր իշխանութեան ներքեւ գտնուող Հայաստանի զանազան մասերու զօրավարներուն։ Հեւեւ որդներէն Յակոբ վարդապետ Հայաստան թողած էր ի դէպս գործոյ

եկեղեցւոյ, Մխիթար Սկեւռացին ալ Բաթուի հետ տեսնուելէն ետքը ետ դարձուցեր էր, տեսակցութեան հետեւանօք պատշաճ եղած հրահանգները եպիսկոպոսներուն հաղորդելու համար, և երկուքն ալ դարձան եկան Հեթումի մօտ։ Նաև բոլոր եկեղեցականք և քահանայք և իշխանք աշխարհիս, Հայաստանի ամէն կողմերէն գային առ նա, և ինքն սիրով ընդունէր զամենեսին, տայր պարգեւս և ուրախ առնէր զամենեսին, նոյն և տայր պարգեւս և հանդերձս վանականաց ի դուռն եկեղեցւոյ, և զամենայն աղքատս աշխարհին իւր ներկայութեան ընդունելով ողորմէր սիրելով ըստ մեծանս կարեաց չափու (ԿԻՐ. 216)։ Ըստ այսմ Հեթում Թագաւոր, այր քաջ և իմաստուն և գիտնաւոր գրոց, կրօնասէր և կրօնագէտ և բարեպաշտ, աւելի աւաքելական և հայրապետական զբաղմանց տուած էր ինքզինքը Հայաստանի մէջ, քան թէ քաղաքական և իշխանական գործառնութեանց։

**1137.** Երբ տակաւին Հեթում Հայաստան կը գտնուէր, 1256'ին սկիզբները մեռաւ Բաթու զօրաւորն հիւսիսոյ, իսկ որդին Սարթախ հօրը մահը լսելով ալ՝ ետ չդարձաւ, և Մանկուի մօտ գնաց, ընդ որ յոյժ ուրախացեալ Մանկու խանն, զայն հօրը յաջորդ նշանակեց և պատուեց իբր եղբայր իւր, և տեղը դարձուց։ Սարթախ քրիստոնեայ էր և Արղուն տաճկահաւատ, և երկու զօրավարներուն մէջ թշնամութիւն կը տիրէր։ Հասան Ջալալ, Խաչէնի իշխանը, հազիւ կրցաւ Արղունի ձեռքէն ազատիլ, և Սարթախի մօտ պաշտպանուիլ, սակայն Բարաքա և Բարքաշա տաճկահաւատ ազգականներ՝ Սարթախը թունաւորեցին, և Արղունի դիրքը զօրացաւ։ Օրբելեան կը պատմէ, թէ Արղուն ալ վասն մատնութեան ինչ ամբաստանուեցաւ մեծ խանին առջեւ, և թէ Սմբատ երկրորդ անգամ (§ 1132), 1256'ին (ՕՐԲ. Բ. 161) Մանկուի մօտ երթալով Արղունի պաշտպան կայնեցաւ և ազատեց, որով զայն իրեն շնորհապարտ ըրաւ, և ոչ գիտէր Արղունն եթէ որով պատուեսցէ զՍմբատ (ՕՐԲ. Բ. 160)։ Նոյն միջոցին Հուլաւուն մեծ զօրավար ուղեց ինքն իջնել Մուղանի դաշտը, Թաթարներուն մեծ ձմերոցը, և Բաչու զօրավարի

Ⴝ ԼԵԹՈՒՄ Ի ԿԻԼԻԿԻԱ

հրաման եղաւ, դէպ արեւմուտք Սելճուքներուն վրայ քալել (ԿԻՐ. 218)։ Թաթար հրոսակը Կարին, Երզնկա, Սեբաստիա, Կեսարիա և Իկոնիոն հետզհետէ զարկաւ մինչեւ Պոնտոսի ծովին և Միջերկրեայ ովկիանին եզերքները։ Բաչուի բանակին օգնական էր Հեթում Թագաւոր, և բազում ընծայիւք և զօրօք առաջնորդութեան յուղարկէր, մինչեւ որ Բաչու բազում զօրօք առաքեաց զնա յերկիր իւր ի Կիլիկիա, ի քաղաքն Սիս, բազում խնդութեան և փառաւորութեան գերեալ Հայաստան վասն նորա (ԿԻՐ. 219)։ Հեթում Սիս հասնելով, 1256 յունիս 5'ին մեծահանդէս մուտք կատարեց, զի երկար բացակայութենէ և յաջող ձեռնարկներէ կը դառնար, և քիչ մը գործերու և հոգերու մտադրութիւն դարձնելէ յետոյ սպաներուն Բարձրբերդ գնաց, յանկարծ իւր ծերունի հօրը մօտ մնալու (ՍԻՍ. 554), որ գրեթէ գործէ քաշուելով հանգիստ ընելու իրաւունքը ստացած էր։ Քիչ օր ետքը, նոյեմբեր 17'ին, մեծաւ շքեղութեամբ Մամեստիոյ մէջ, Հեթում կատարեց իւր անդրանիկ Լեւոնի յասպետացուցանելոյ հանդէսը, որ էր ասպետական աստիճանի բարձրացնելու արարողութիւնը, Արեւմտեայց սովորութեան համեմատ։ Կոստանդին Թագաւորահայր կը նախագահէր իւր քահանայ և թագաւոր անդ թոռին պաշտօնական բարձրացման, ամենայն զարդուն և շքովն (ՍԻՍ. 248), որոց մէջ էին նաեւ Կոստանդինի աղջիկը Մարիամ և ամուսինը Յոպպէի կոմսը, և Հեթումի աղջիկներէն Սիպիլ ու ամուսինը Անտիոքի Բոյեմոնդոս իշխանը, և Ֆիմի ու ամուսինը Յուլիանոս Սիդոնի կոմսը։ Մատնաւոր դէպքերէն անցողակի յիշենք եւս Հեթումի Լեւոն եղբօր մահը 1258'ին, և անկէ ետքը Հեթումի մինչեւ Տրիպոլիս երթալը տեղւոյն կոմսին և Անտիոքի իշխանին մէջ ծագած գժտութիւնը հաշտեցնելու, և 1259'ին Տարսոնի մէջ Հոգեգալստեան տօնին օրը՝ որ կը հանդիպէր յունիս 1'ին, Հեթումի կրտսեր եղբայրներէն Պաղտինի, Գոների վանքին եպիսկոպոս ձեռնադրուիլը Յովհաննէս անունով, իւր երէց եղբօր Բարսեղ եպիսկոպոսի ձեռաց ներքեւ կրթուելէ ետքը (ՍԻՍ. 144)։

**1138.** Այս հանդիսութիւնէն ետքը պէտք է դնել Հեթում թագաւորին և Կոստան-

**ՀԵԹՈՒՄ Ի ՄԻՋԱԳԵՏՔ**

*դին կաթողիկոսին միասին Միջագետք երթալը Հուլաւունը ողջունելու Եդեսիոյ մէջ, զոր 1259'ին հանդիպած կը նշանակէ պատմիչը* (ՎԱՐ. 151)։ *Հուլաւուն նախընթաց տարւոյն մէջ կատարած էր Պաղտատի արշաւանքը, և քաղաքը առած բուռն զօրութեամբ։ Պաղտատ կը շարունակէր Աբբասեան ամիրապետներուն քաղաքամայրն ըլլալ, ուր 1226'ին Տահէր-Պիլլահէ եաքը իշխանութեան բարձրացած էր Մըսթանսըր-Պիլլահ, 1242'ին իրեն յաջորդած էր Մըսթաղէմ-Պիլլահ, լոկ անուանական կամ կրօնական իշխանութեամբ, և այս վերջնոյս ամենիշխան փոխարքայն էր Մուհամմէտ Ելքամի, ինքն Ալիեանց պաշտպաններէն և հետեւաբար Աբբասեանց ամիրապետութեան ներքին թշնամի։ Մանկու խան, Հեթումի կարծեցեալ յանձնարարութենէն ալ ելլի* (§ 1134), *իրեն օգնականին նախնական նպատակին հետեւելով, Հուլաւուն եղբօրը յանձնարարած էր վերջ տալ Պաղտատի ամիրապետութեան, և նա թէ իր զինուորական ոյժով և թէ Ելքամիի կամակցութեամբ 1258 փետրուար 5'ին, իր դրօշը կանգնած էր Պաղտատի աշտարակներուն վրայ, և Մըսթաղէմ անձնատուր ըլլալու ստիպուած, զոր առաջ բանտարկել, և քանի մը օր ետքը փետրուար 10'ին բանտին մէջ սպաննել տուած էր* (ՎՆՐ. 468), *թէպէտ նոյն ինքն Հուլաւունի ձեռքով սպաննուած կ'ըսեն մեր պատմիչները* (ՎԱՐ. 150, ԿԻՐ. 223)։ *Անհեղ և անհնելի եղաւ Պաղտատի կոտորածն ու կործանումը, և միայն ապրեցան քրիստոնեայք որ կային անդ* (ՎԱՐ. 150), *և այն ալ Հուլաւունի Տօղուզ տիկնոջ բարեխօսութեամբ։ Տօղուզի համար գրուած է թէ քրիստոնեայ էր նեստորական աղանդէ, բայց դաւանական տարբերութեանց անտեղեակ՝ անխտրաբար սիրով մեծարէր զամենայն ազգ քրիստոնէից, և Հուլաւունի հաւանութեամբ, շարժական եկեղեցի և քահանաներ և պաշտօնեաներ կը շրջեցնէր բանակին հետ, որք ի յայն ժամանակի պաշտամունք կը կատարէին։ Տօղուզի միջնորդութեամբ շատ անգամ քրիստոնեաներ Հուլաւունէ ազատութիւն և խաղաղութիւն կը ստանային* (ՎԱՐ. 149)։ *Պաղտատէ ետքը նշանաւոր եղաւ Մուֆարգինի առումը, որուն սուլտանը երկար պաշարման դիմացաւ, բայց Հուլաւուն այնչափ նեղեց, որ պաշարեալներ մինչեւ իսկ զանսուրբ անասունս, և զայս զաղտեղս, զայս զմեռեալսն խորեանց ուտել ստիպուեցան* (ՎԱՐ. 150), *բայց քաղաքը վերջապէս գրաւուեցաւ 1259 տարւոյ մեծպահքի միջոցին, և մնացեալներն ալ կոտորուեցան* (ԿԻՐ. 226)։ *Այդ պաշարման միջոցին Հուլաւունի բանակները ամէն կողմ ցրուած՝ աւերածներ կը հասցնէին, և բռնի հարկահաւաքութեամբ ժողովուրդը կը նեղէին։ Իսկ Հայոց թագաւորին և կաթողիկոսին Միջագետք երթալը, ոչ միայն պարտաւորութեան արդիւնք էր, այլ և քրիստոնէից մասին դիւրութիւններ ստանալու պիտի ծառայէր։ Զի եթէ մեր պարոնն Հեթում մէկ կողմէ Հուլաւունի կ'օգնէր Եգիպտացւոց դէմ, և ընդ նմա էր յաղթող զամենայն աշխարհն Շամայ, իմա՛ Ասորիքը, միւս կողմէն արդիւնաւոր կ'ըլլար աղօթելով է մաղթանօք զքրիստոնեայսն, զեկեղեցականս և զաշխարհականս* (ՎԱՐ. 151)։ *Չենք գիտեր թէ Հեթում կը յուսա՞ր արդեօ՞ք որ Հուլաւուն մինչեւ Երուսաղէմ ալ յառաջէ. բայց աս պարտաւորուեցաւ ետ դառնալ, զի Մանկու խանին մահուան լուրը եկաւ, և ինքն յաջորդութիւնը ձեռք ձգելու փութաց, Քիթբուղա զօրավարին յանձնելով նոր գրաւուած տեղերու պահպանութիւնը։ Իսկ Հեթում Կիլիկիա կը դառնար, կաթողիկոսն ալ միասին։ Սակայն Եգիպտոսի սուլտանը առաւելագոյն զօրութեամբ կը յարձակէր միւս տարի 1260'ին* (ԿԻՐ. 228), *և Թաբորի ճակատամարտին մէջ յաղթական կ'ըլլար, և փախստական Թաթարներ Կիլիկիա կ'ապաւինէին, ուր Հեթում զիրենք կը հոգար, և հանդերձ և երիվար և ռոճիկ տալով առ տէրն իւրեանց կը դարձնէր, ինչ որ Թաթարներու աչքին կը բարձրացնէր Հեթումի և Հայերուն պատիւը* (ՎԱՐ. 152)։

**1139**. *Հուլաւուն խան յաջողած էր մեծ խանութիւնը ձեռք անցընել, թէպէտեւ անդադար պատերազմի վրայ ըլլալով ընտանեկան շրջանակի մէջ ժառանգական վէճերով* (ԿԻՐ. 231), *որ 1259'էն մինչեւ 1265, մինչեւ Հուլաւունի իշխանութեան վերջը անւեցին։ Այդ պատճառով մեծամեծ ար-*

չուանքներ տեղի չունեցան Թաթարներու կողմէն, բայց պակաս չեղան Ասորիքի կողմերը Եգիպտացիներուն և Թաթարներուն պատերազմները, որոց ստիպեալ մասնակցեցան Հայերն ալ՝ իբր Թաթարներու դաշնադիր նիզակակիցներ, ինչ որ միւս կողմէն կ'աւելցնէր Եգիպտացիներուն թշնամութիւնը Հայերուն դէմ։ Մեր նպատակէն դուրս կը մնայ մանրամասնութիւններ տալ, որոնց մէջ յիշատակութեան արժանի են Անտիոքի պաշտպանութիւնը Եգիպտացիներուն դէմ 1262ին, Այնթապի վրայ կրկին յարձակումները 1263ին, և Բերիոյ աւարառութիւնը նոյն տարին։ Իսկ ներքին պարագաներէն, պէտք յիշենք 1262'ին վերջերը թագաժառանգ Լևոնի ամուսնութիւնը ապստամբ Կոստանդին Լամբրոնացիի որդւոյն Հեթումի դստեր Աննայի հետ, 1263'ին արքայաքոյր և Ցոպքէի կոմսուհի Մարիամի մահը, 1264 դեկտեմբեր 26'ին թագուհւոյ Զապէլի մայր և Կոռիկոսի իշխան Օշինի մահը՝ Պտղոմայիսէ պապական նուիրակին տեսութենէ դառնալէն ետքը։ Կը յիշուի ևս թէ 1263 ամառուան Հեթում նոր ճանապարհութիւն մը ըրած ըլլայ մինչև Ատրպատականի Դավրէժ քաղաքը, Հուլաւունի հրաւէրին համեմատ և անոր ինքնակալութիւնը մեծարելու դիտմամբ (ՍԻՍ. 554), բայց այդ մասին մանրամասնութիւններ կը պակսին, և ամէն պատմագիրներն ալ գայն չեն յիշեր։

ՋԱՆԱՁԱՆ ԴԻՊՈՒԱԾՆԵՐ

**1140.** Պապական նուիրակ մը Արևելք կը հասնէր Կոստանդին կաթողիկոսի 42'րդ տարին (ՍԿՆ. 7), որ կը պատասխանէ 1263'ին։ Կոստանդին բաւական սերտած էր Ասորւոց ծովեզերեայ քաղաքները գտնուող Հայերուն յանձնարարել, որ նուիրակին պատիւ ցուցնեն անցած ատենը, իսկ սա նոյն իսկ կաթողիկոսին գալուն սպասելով (ՍԿՆ. 10), մերժած էր Հայերու այցելութիւնները, և գանգատած էր Օշին արքայեղբօր՝ որ Հեթումի կողմէն կը ներկայանար, ինչպէս յիշեցինք։ Ասոր վրայ, [illegible] (ՍԿՆ. 8), որոշուեցաւ Մխիթար Սկևռացիին պատգամաւորութիւնը, որ յանձն առաւ այն պայմանով, չի [illegible], և ընկերներու հետ [illegible], և Երուսաղէմի Հայ եպիսկոպոսն ալ միասին առնելով Պտղոմայիս հասաւ [illegible], ուր նուիրակը ցասման նշաններ կը ցուցնէ գլուխն ու ընծաները մերժելով, և Մխիթար ու ընկերներ հազիւ կրնան գայն ողոքել (ՍԿՆ. 10)։ Իսկ յաջորդ 1264 յունուարի առաջին օրերը, [illegible], տեղի ունեցան այն վիճաբանութիւնները (ՍԿՆ. 12), զորս յետոյ Մխիթար գիրի առած է։ Նոյն ատեններ Եգիպտացիներ հետզհետէ աւելի կը զօրանային Ասորիքի մէջ, ինչ որ վտանգ կը սպառնար Անտիոքի և ուրիշ Լատին իշխանութեանց, որոնք Երուսաղէմը կորսնցնելէ ետքն ալ կը մնային, գլխաւորապէս ծովային քաղաքներու մէջ, ինչպէս էին Պտղոմայիս, Տրիպոլիս, Սիդոն և Ցոպպէ։ Ասոնք մեծ յուսադրութիւններ ունէին Հայոց թագաւորութեան վրայ, որ կարևորագոյն քրիստոնեայ իշխանութիւնն էր Արևելքի մէջ, և՝ փոխադարձ ամուսնութիւններով ալ անոր պաշտպանութիւնը ապահովել կ'աշխատէին։ Կղեմէս Դ պապն ալ, որ Ուրբանոս Դ'ի յաջորդներէն՝ Աղեքսանդր Դ'է և Ուրբանոս Դ'է ետքը աթոռ բարձրացած էր 1265'ին, իւր նախորդներուն նմանողութեամբ նորէն խաչակրութիւն մը կը խորհէր պատրաստել, Լատիններու պաշտպանութեան և Երուսաղէմի առման նպատակով, և իբր սկզբնաւորութիւն և նախապատրաստութիւն Հեթումի կը գրէր յուլիս 26'ին, որ [illegible] (ԿԱԼ. 389)։

ՊԱՊԻՆ ՆՈՒԻՐԱԿԸ

**1141.** Հեթումի նորէն գործի ձեռնարկելը և թշնամութեանց կրկին գրգռուիլը չպատմած, պէտք է յիշենք Վարդան վարդապետին Հուլաւունի ներկայանալը, զոր ինքն իսկ նկարագրած է հետաքրքրական մանրամասնութիւններով (ՎԱՐ. 155-161)։ Հուլաւուն ուզած պիտի ըլլայ Հայոց վարդապետներէն գլխաւոր մը անձամբ ճանչնալ, որ Շնորհաւոր անուն [illegible] ձևւքով իրեն մօտ հրաւիրեց Վարդան Արևելցին, որ ժա-

ՎԱՐԴԱՆ ԽԱՆԻՆ ՄՕՏ

*մանակին վարդապետներէն նշանաւորագոյնն էր։ Վարդանի ընկերացան Սարգիս և Գրիգոր վարդապետներ, և Տփղիսի առաջնորդ տէրտէրն, զորս Շնորհաւոր տարաւ նորոգ՝ ծախիւք և գրաստիւք։ Վարդան հաւանաբար մեկնեցաւ իր Կոյանի վանքէն* (§ 1124), *այլ թէ ուր հանդիպեցաւ Հուլաւունի որոշ չգրեր. բայց պէտք է պաշտօնական քաղաքին մէջ եղած ըլլայ, զի Թաթարներուն տարեմուտի հանդէսին ներկայ եղած է, որ կը հանդիպէր* 1264 *յուլիսին, և Հայոց* 713 *տարւոյն, իսկ տարւոյ շարժական ամսաթուով կը սկսէր յունիս* 13*'ին, որով յուլիսի առաջին և տարւոյն վերջին օրերուն կ'իյնայ Թաթար ամանորը, Խուրուլթայ կամ Գուրուլթայի կոչուած, որ ամէն համախումբ աշխարհատեսներու անունն ալ եղած է։ Տօնը ԷԹր լուսինդ կը տեւէ եղեր մեծ շուքով, և ամենեքին նոր զգեցեալ. և Թագաւորք և սուլտանք նուէրներ զրկած են եղեր, և յանուանէ կը յիշէ Հայոց Հեթում և Վրաց Դաւիթ թագաւորներուն և Անտիոքի Լատին իշխանին ընծաները։ Հուլաւուն թող չտար որ Վարդան երկրպագութիւն ընէ, գիտնալով թէ արքայք կամ քրիստոնեայք Աստուծոյ միայնոյն կը պահեն այդ ձևը։ Հուլաւունի առաջին յայտարարութիւնը կ'ըլլայ, Կոչել եմ զքեզ որ տեսանես զիս և ճանաչես, և ի սրտոյ աղօթես վասն իմ, և իր խմելու գինին ալ վարդապետին օրհնել կու տայ։ Եղած խօսակցութեան մասին Վարդան կ'ըսէ. Առնելով ի շնորհս ֆրեր, շատ խօսեցաւ, և կը պատմէ թէ չարականներ երգեցին, նոյնը ըրին հոն եղող Վրացիներ, Ասորիներ ու Յոյներ ալ, բայց միշտ առաջին պատիւը Հայերուն է եղած։ Հուլաւուն Վարդանի հետ առանձին խօսակցութեանց ալ մտած է քաղաքական նիւթերու վրայ, և Վարդան պատշաճ խրատներ տուած է, Ի յոր տուաւ ճենց մարդ կոյս՝ որ յԱստուծոյ երկնչի և զնա սիրէ, կարենայ որ կոչեցաւ, և զնա ոչ զիջաւ։ Քրիստոնեաներու վրայ խօսելով, Վարդան վստահեցուցած է, թէ Ամենայն սիրտ հետ զնա ցու է, և զնա աղօթէ են տանն, և Հուլաւուն ըսած է, Մենք քրիստոնէից ենք և քրիստոնէութիւն կայ ի մեր տանս։ Այդէն ալ յիշեցինք Տօղուզ տիկինը* (§ 1137)։ *Տեսնելով որ Վարդան ողջորենի էր հագած, կ'ուզէ անոր ոսկէ զգեստ և շատ ոսկի տալ, բայց Վարդան պատճառելով թէ աբեղայ է, կը խնդրէ միայն ողորմութիւն ի վերայ աշխարհի։ Բայց Հուլաւուն իրեն պզտիկութիւն կը սեպէ առանց նուէրի ճամբել, ուստի անոր կ'ընծայէ երկու հանդերձ իրեն յարմար և բալիշ մի ոսկի. և շնորհքներու հրովարտակ մըն ալ կու տայ, աւելցնելով, թէ ընդ յո ուրէք դէպ առնել՝ զայն ու բերել տար։ Իսկ ոսկի բալիշը թագաւորական ձոյլ ոսկի մըն էր, է շատ նշայ մէջ և կէս լտեր մէջ* (ՕՐԲ. Բ. 170), *որ Թաթարներուն համար ամէնէն մեծ պարգև էր։ Վարդան բաւական երկար կը մնայ խանին մօտ, զի տակաւին հոն է եղեր* 714 *ամանորին, որ կ'իյնար* 1265 *յունուար* 14*'ին, և հարկաւ գարունին պայմանաւոր էր սպասել դառնալու համար, և ճիշդ այդ միջոցին փետրուարի մէջ Հուլաւուն կը մեռնի, և Վարդան կը գրէ, Թէ կոտորեցա՞ւ, այն Աստուած գիտէ, զի համբաւեցին նախ թէ դեղով և հարբեալ ոգւոյն, և յետոյ ծածկեցին զայդ, և այս կասկածը ծագած է հիւանդութեան առեն գործածուած կախարդական հմայքներէն։ Թիւնաւորութեան խօսքը ուրիշներ ալ կ'ընեն, և կ'ամբաստանեն Խօջա անուն գիւանապետը, որ էր ընտիր և վերակացու ամենայնին, թէ դեղակուր ըրաւ Հուլաւունը, ինչպէս յետոյ Տօղուզ տիկինն ալ* (ՕՐԲ. Բ. 165)։ *Տօղուզ ուզած է պատարագ առնել տալ Հուլաւունի համար, որուն Ասորիներ հաւանած են, այլ Վարդան դիտողութիւն է ըրած, և յանձնարարած է ողորմութիւն և հարկաց թեթևութիւն առնել։ Հուլաւունի յաջորդած է որդին Աբաղա, և երեք ամիս ետքը Տօղուզ տիկինն ալ վախճանած է, բայց Թաթար արքունեաց մէջ քրիստոնէից պաշտպան մնացած է Թուխթանի տիկին, Տօղուզի ազգական մը։ Նոյն իսկ Աբաղա քրիստոնեայ կին առած է, Յովհաննէս Վատակէսի կամ ըստ այլոց Միքայէլ Պալէոլոգի՝ Դեսպինա աղջիկը* (ՎԱՐ. 161)։ *Իսկ Աբաղայի մկրտուիլը Երզնկայի եպիսկոպոս Սարգիսի ձեռօք և այնպէս պսակուիլը* (ԿԻՐ. 234), *պարզ զրոյց մըն է, և Հեթում պատմիչ Աբաղայի քրիստոնէանալն ալ կը հերքէ* (ՀԵԹ. 51)։ *Վարդան ետ եկած է տարի մը տեւող ուղևորութենէ վերջը։ Ջանք կ'ընենք քաղել Վարդանի Թաթարներուն վրայ*

տուած ծանօթութիւնները, որք բաւական հետաքրքրական են ազգաբանական ուսումնասիրութեանց համար (ՎԱՐ. 160)։

ՄԱՌԻԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ

**1142.** Կղեմէս Դ պապին յորդորը, և Հուլաւունի մահուան վրայ Եգիպտացւոց քաջալերուիլը, և Լատին ու Հայ իշխանութեանց սպառնալը, պաշտպանութեան պատրաստուեցին Հեթումը, և հարկ եղաւ որ անձամբ երթայ Թաթար զօրավարին հետ տեսակցելու, և պատերազմին կարգադրութիւններն ընելու։ Վահրամ կ'ըսէ թէ Հեթում ելեալ առ Մողըն յաղէ անկեալ գնաց, այսինքն Մուղալներու կամ Մոնկոլներու զօրավարին, բայց չենք կարծեր թէ մինչև Մուղալի դուռը գացած ըլլայ, այլ միայն արևմտեան բանակին հրամանատարէն օգնութիւն առնուլ դառնալու համար։ Բայց Փնդուխդարի կամ Պիպարսի զօրավարը փութաց՝ Թաթար բանակը չհասած գործը աւարտել։ Նախ ի յԱնտիոք Դեզըն հասեալ, և զնա հրոյ ճարակ տուեալ, անտի ի Կիլիկիա արշաւեալ Հեթումի դէմ եկաւ, այլ մինչդեռ չէր նա ժամանեալ, պատերազմը սաստկացուց և Հայոց բանակը ցրուեց (ՎԱՐ. 223), նոյն իսկ Սիս քաղաքն ալ գրաւեց, և աւերմամբ և հրով ծախեալ քանդեց, և հրաշակերտ տաճարն այրեալ աւերեց, և այնպէս յաղթօղն ետևանց անդրէն դարձեալ գնաց (ՎԱՐ. 224)։ Հեթումի բացակայութեան Լևոն և Թորոս արքայորդիներ պատերազմին կը հրամայէին, բայց Թորոս պատերազմեցաւ և Լևոն գերի ինկաւ։ Եգիպտացիք հնգետասան օր յամեալ Կիլիկիոյ մէջ, և ամէն կողմ հրով աւերեալ, ետ դարձան աւարաւ և գերութեամբ տասնեկան հազարաց, Լևոն արքայորդին ալ մէկտեղ տանելով (ՎԱՐ. 163)։ Աւարին մէջ եղած կ'ըլլայ արքունական գեղանուէր գանձին պարունակութիւնն ալ, որ վաթսուն հազար հազար կարմիր գրուած է, և վեց միլիոն ոսկի ըսել կ'ըլլայ, զոր եթէ չափազանցուած սեպենք, աւարը միշտ մեծագումար կ'ըլլայ, եթէ վեց հազար հազար ալ կարդացուի, ինչպէս ոմանք ուզած են ուղղել (ՎԱՐ. 162)։ Պատերազմը տեղի ունեցաւ Մառի կոչուած կապանին ներքև, Ամանոս կամ Սև-Լերանց ստորոտը, 1266 տարին, մերձ յաշնան եղանակն (ՎԱՐ. 162), որ ըսել կ'ըլլայ սեպտեմբերի մէջ, քանի որ Եգիպտացւոց Կիլիկիա մտնելը օգոստոս 3'ին (ՄԻՍ. 401), կամ 12'ին կը նշանակուի (ԿԱԼ. 390)։ Ցայսմաւուրքը յունուար 23'ին կը դնէ Թորոսի սպանութիւնը (ՑԱՍ. Ա. 47), որ դժուարաւ կը համաձայնի վերոյիշեալ տեղեկութեանց, նոյն իսկ եթէ շարժական տօմարի վերածենք, զի արացի 16'ը կը պատասխանէ 1266 յունիս 28'ին։ Երբոր Հեթում Կիլիկիա դարձաւ, աւերածին և կոտորածին ականատես լինել պարտաւորուեցաւ, և բազում լացեալ և ողբացեալ էր, այլ ի յուսոյ ոչ դադարեալ՝ սկսաւ ամէնը մխիթարել, ամէնուն օգնել, աւերածը վերաշինել, կարասիները յանձնանձել, գերիները գնելով ազատել, և ողբութեամբ մեծաւ լցեալ՝ աղէտին դարմանը հոգալ (ՎԱՐ. 225)։ Ինչ որ աւելի ծանր էր, Թաթարներուն դանդաղութիւնն էր, զի Աբաղայ ղան մարդն ընդ սահմանակիցս, հրամայեաց յուղարկել Եգիպտացւոց դէմ ելլալ (ՀԵԹ. 52)։ Այդ տխուր կացութիւնը տևեց բաւական ժամանակ, և ամ մի և կէս ամս տևեց Լևոնի գերութիւնը (ՎԱՐ. 226), և Վարդան որ այդ միջոցին կը փակէ իր պատմութիւնը, իբրու ունենք ունեցաւ հառաչանօք գրել, կամք ընդարձակել և յերկարել (ՎԱՐ. 163)։ Հեթում վերահաս աղէտին մասին փութացած էր Կղեմէս պապին ալ գրել, քանի որ սատարելապէս անոր յորդորներն էին եղած տառապանքին շարժառիթները, Եգիպտացւոց զայրոյթը գրգռելով. և պատրաստ ու պատշաճ օգնութիւնը պահանջած էր պապէն, որ միայն յուսադրութեան և մխիթարութեան գիր մըն էր ուղղած տարի մը ետքը, 1267 մայիս 17'ին, Հեթումի արդիւնքներն ալ յիշելով, թէ ազատեց բազում անգամ զքրիստոնէական ժողովուրդն, Անտիոքի օգնեց, ընդդիմացաւ թշնամեաց սուրբ խաչին, և սիրեց զբարեկամութիւն Ֆռանկաց (ԿԱԼ. 392)։ Սակայն դժբախտաբար այդ բարեկամութիւնն էր, որ աղէտը հրաւիրեց, այլ դարմանը չպատրաստեց։

**1143.** Կոստանդին Կաթողիկոս ալ խառնուած էր անշուշտ իր ձայնը Հեթումի աղաչանքներուն, յոյս դնելով Արևմուտքին զօրութեան և քրիստոնէութեան վրայ, բայց նա պապին պատասխանն ալ լսելու չհասաւ։ Վասնզի քիչ օր առաջ կնքած էր նա իր

*իւր բազմօրեայ կեանքը և երկարամեայ պաշտօնավարութիւնը. 1267 ապրիլ 9ին, որ չորեքշաբթի օր էր, ... 716 տարի 26 օր ... Ղազարու յարութեան յիշատակ, է. կոփորման ժամանեցուցանողն, ինչպէս ամենայն ճշգութեամբ կը նշանակէ Վարդան* (ՎԱՐ. 163), *միշտ չորեքշաբթի տոմարը գործածելով, մինչ Կիրակոս սկսած էր անշարժ տոմարով թուականներ դնել* (§ 1133)։ *Կոստանդին Բարձրբերդցի 1220 ամառէն մինչեւ 1267 գարուն, քիչ օրերու տարբերութեամբ, 47 լրացեալ տարիներ հայրապետական աթոռին վրայ մնաց, մինչեւ վերջին վայրկեանը իրական և գործնական պաշտօն վարելով։ Իրմէ աւելի երկարատեւ հայրապետութիւն վարողներ եղան միայն Գրիգոր Պահլաւունի 1113էն 1166, և Սահակ Պարթեւ՝ 387էն 439, և յիսնամեակներ լրացուցին, սակայն Գրիգոր շատ երիտասարդ աթոռ բարձրացած էր, և Սահակ մի մեծ մասը վտարանդի և պաշտօնէ հեռու անցուց։ Որչափ ալ Կոստանդինի հայրապետութեան առաջին ժամանակները համեմատաբար խաղաղ էին. սակայն վտանգները անպակաս եղան և դժուարութիւնները չարունակ, այնպէս որ իրաւամբ գրուած է իրեն համար, թէ կոյ-րից և կաղաց և որբոց եղաւ աչք, է ձեռնա-բեր և է ցանկացող տեսոյ* (ՎԱՐ. 163), *այլ շատ աւելի դառն եղաւ վերջին տարին Փնտուխտարի արշաւանքովը և Մասիի ճակատամարտին ձախողութեամբը, որոնք մէջ բերէին զերկուս նորա, և արարին տագնապել աշխարհն Հայոց* (ՎԱՐ. 164)։ *Կոստանդին լոկ իւր ձիրքերով ընդ ամենայն առաքինանս յառաջանալով բարձրացաւ, իւր արդիւնաւորութեամբը ամենեքեան հաճոյացեալ եղաւ, և յամենայն ազգաց և լեզուաց գովեալ սիրուեցաւ։ Իրաւ, ոչ ինքն իւրովի մեծագործ բան մը կատարեց, և ոչ ալ իւր եսաւէն գրական երկասիրութիւն մը թողուց, որով գիտականց հանճարի մը առհաւատչեայն տուած ըլլար, սակայն հաւատարիմ կանոնաւորութեամբ, հաստատուն ուղղութեամբ, աչալուրջ արթնութեամբ և անվկանդ առկուռնութեամբ 47 ամբողջ տարիներ պաշտօնի գլուխ գտնուիլ, և իր մասին մեղադրանքի կամ բամբասանքի առիթ տուած չըլլալն ալ, բացառիկ արժանիք կազմող պարագաներ են, զոր պէտք է համարձակ վկայէ պատմութիւնը Կոստանդին Բարձրբերդցիին նկատմամբ։*

КАТОЛИКОСИН МАҲԸ — ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՄԱՀԸ

**1144**. *Կրօնական և եկեղեցական խնդիրներու մասին պահած ուղղութիւնը դիւանական եղաւ, և օտար եկեղեցիներու հետ բարեկամական, ինչպէս որ պատմուած եղելութիւններն ալ ցուցուցին, իրեն համամիտ ընկեր ունենալով այդ մասին Հեթում թագաւորը, և թերեւս երկուքն ալ միասին Կոստանդին թագաւորահօր ազդեցութիւնը կրելով։ Սակայն իրերը մօտէն քննած ատեննիս աւելի բան չենք տեսներ, բայց եթէ անպայման հաւատք մը Լատին աշխարհքին զօրութեան և կարողութեան վրայ, և հաստատ համոզում մը Լատին աշխարհքին մէջ պապին վայելած գերիշխանութեան վրայ։ Երկրորդը իրականութիւն էր, իսկ առաջինին մէջ իրական կարողութեան հետ գործնական կամեցողութիւնը չկար, բայց այդ կէտը Հայոց թագաւորին և Հայոց կաթողիկոսին մտադրութեան առարկայ չեղաւ, մինչ պէտք էր նախապէս այդ կէտը ապահովել և երաշխաւորել։ Անոնք իրենց համոզման հետեւելով՝ ուզեցին չօգնել ու դգուել պապին անձնասիրութիւնը, չլսելու զարնել անոր խրոխտ բացատրութիւնները, կողմնակի կերպերով գլել եղած դժուարութիւնները, առանց Լատինները վշտացնելու, բայց և առանց սորվանալու։ Այդ կէտին մէջ մեղադրելի բան չենք տեսներ Կոստանդինի և Հեթումի վրայ։ Պապին ուղղուած նամակներուն մէջ քիչ մը աւելի մղուած շողոքորթ բացատրութիւններ, ոչ հաւատոյ դաւանութիւն կը կազմեն, և ոչ վարդապետական գրութիւն, և եթէ անոնք քիչ մը աւելի առատացան, երբեք այդ պատճառով հայադաւան եկեղեցին իր սկզբունքէն շեղած չըլլար։ Անտիոքի պատրիարքներուն յաւակնութիւնը Դաշանց Թուղթին պատուակալ տիրացնելին* (§ 1110), *աւելի ճարտար քաղաքագէտի գոլնաս կը կազմէ, քան թէ դիմացինին հանդէպ սորվեցուած։ Իսկ Լատիններու հետ յարաբերութեան միջոցին,*

*անանցմէ եկեղեցականապէս անջատուած Յոյներուն հետ բանակցութեան մասնակին* (§ 1111), *և կաթողիկոսին զայն երկրորդելը* (§ 1135). *յայտնապէս կը ցուցնէ թէ երկուքն ալ լատինականութենէ կը խորշէին։ Իսկ Եւ յՈրդւոյ'ի* (§ 1130), *և Սուրբ Աստուած'ի, և հիւանդաց իւղին խնդիրներուն* (§ 1123) *մասին՝ բաւական խօսեցանք իրենց կարգին, թէ երբեք Հայեր Լատիններու համակերպութիւնը չեն ընդունած, որով Կոստանդինը համադաւան նըկատելու բնաւ փաստ չեն ըլլար, և իր լատինասիրութիւնն ալ չափաւոր սահմանի մը մէջ կը պահեն։ Ստոյգ է որ Պահլաւունիներու ժամանակին յարաբերութիւնները, Բարձրբերդցիին ժամանակ աւելի զօրացան և ընդարձակուեցան, բայց չունեցան այն սահմանը, զոր համադաւանները կը փափաքին տալ անոնց, և չհասան այն կէտին որ աւելի ետքի ժամանակներու մէջ տեսնուեցաւ։ Թերևս յետիններուն քաջալերութիւն տուած ըլլան՝ աւելի ընդարձակելով յարաբերութեանց դուռները, սակայն մենք ալ այժմ կը բաւականանք շեշտել, թէ Կոստանդին Բարձրբերդցիին և Հեթում Առաջինին ժամանակ գործեր օտարացեալ սահմանին հասած չէին։*

**1145**. *Համաձայն մեր հետեւած ոճին, անցնինք քանի մը համառօտ տեղեկութիւններ տալ ժամանակին նշանաւոր անձնաւորութեանց վրայ։ Առաջին այդ շարքին մէջ կը ներկայանայ Յովհաննէս Վանական վարդապետը, որուն նախընթացը ցուցուցինք, և գերութիւնը պատմեցինք* (§ 1114), *և Հոգւոյն Սրբոյ խնդիրին մասնակցութիւնը յիշեցինք* (§ 1128), *և որ իր կեանքին մնացորդը անցուց Խորանաշատ վանքը, մինչև իր մահը, որ տեղի ունեցաւ* 1251 *մարտ* 18'*ին, որ ըստ Նոր Եղանակի Ճշմարտութեան, այսինքն ըստ Սարկաւագադիր անշարժ տոմարին կը համեմատի յունիսի ամսոյ տասն* (ԿԻՐ. 199), *մինչ ըստ շարժական տոմարին պիտի համեմատէր յունի* 30'*ին։ Յայսմաւուրքը յունուար* 29'*ին կը դնէ Վանականի մահը,* 70 *տարեկան հասակին մէջ* (ՑԱՍ. Ա. 56), *որ պատմիչներուն գրածին չհամաձայնիր, նոյն իսկ շարժական տոմարի վերածելով, զի արացի* 22'*ը,* 1251'*ին կը համդիպէր յուլիս* 8'*ին։ Վանականի պատմութիւնը դեռ երևան ելած չէ, իրեն վերագրեալ մեկնութիւններուն մասին կասկածներ կը յայտնուին, իսկ ճառընտիրներու և հաւաքածոներու մէջ բաւական գրութիւններ կը գտնուին իր անունով։ Այս կարգէն են երկու հատուածներ, որոնց մէջ կը խօսուի Հայոց Առաջին Լուսաւորիչներուն և անոնց հետեւողներուն վրայ* (ԹՂԹ. 533-536)։ *Հիմնաւոր և կանոնաւոր տեղեկութիւններ չեն տրուածները, գուցէ Վանականի վաւերական գրութիւններ ալ չեն։ Մեզի բաւական ըլլայ դիտել, թէ Հայոց Թադէոսին Յուդա Թադէոս կամ Թադէոս Ղեբէոս ըլլալը, զոր իր կարգին պաշտպանեցինք* (§ 6.7), *շատ կանուխէն ալ ազգին ծանօթ կէտ մըն էր։ Վանականի յաջորդութիւնը բաժնուեցաւ իր մահուանէն ետքը, Խորանաշատի առաջնորդութիւնը ստանձնեց իր եղբօրորդին Պօղոս վարդապետ, իսկ ուսուցչութիւնը իր ազգականներէն Գրիգորիս վարդապետ* (ԿԻՐ. 200)։

ՎԱՆԱԿԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ

**1146**. *Վանականի աշակերտներուն գլխաւորն է Վարդան վարդապետ Արեւելցին, զոր յիշեցինք կաթողիկոսին մօտ գալուն* (§ 1117), *և իբր կաթողիկոսական պատուիրակ Հայաստան երթալուն* (§ 1118), *և Հուլաւունի այցելութեան առթիւ* (§ 1141)։ *Կեանքին մնացորդը մնաց գլխաւորապէս Կայենի ու Վիրապի ու Թեղենեաց վանքերը, Սաղմոսավանք ալ անցուց* (ՍԻՍ. 102), *և վերջապէս Հաղբատ երթալով մեռաւ* 1271'*ին։ Վարդանէ մնացած գործեր շատ աւելի են, վասն զի պատմութենէն զատ՝ ուսկից այնչափ օգտուեցանք, և առակներէն զատ՝ որ այնչափ նշանաւոր են իրենց նրբութեամբը, ունի զանազան մեկնութիւններ Սաղմոսի, Դանիէլի, Հնգամատեանի և Երգոց-երգոյն, և շատ մը ճառեր և մանր գրուածներ, թէպէտ ոմանց մասին երկբայութիւններ կը յարուցուին։ Վարդանէ քիչ ետքը,* 1272 *յունուարին մեռաւ նորա աշակերտակիցը Կիրակոս Գանձակեցին, նա ալ պատմութեան մը հեղինակ, որուն մէջ սակայն շատ ընդարձակ տեղ տրուած է զրոյցներու և հրաշալիքնե-*

ՎԱՆԱԿԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐ

*րու։ Ասոնց ընկերակից ճանչցուած է նաև Մաղաքիա Ակներցի, Ակներ վանքի աբեղայն, որ Նետողաց ազգին՝ այսինքն Թաթարներուն համառօտ պատմութիւնն է գրած։ Աշակերտակից է Յովսէփ Արտաղեցին ալ, որուն վրայ արդէն խօսեցանք* (§ 1126), *բայց իբր մատենագիր ճանչցուած չէ։*

**ՄԽԻԹԱՐ ՍԿԵՒՌԱՑԻ**

**1147**. *Ժամանակակից է Մխիթար Սկեւռացին ալ, որ առաջ* 1254'*ին Հեթումի ընկերացու մինչև Բաթուի մօտ երթալը* (§ 1136), *և երկրորդ անգամ* 1263'*ին վերջերը պատուիրակ գնաց Պաղամայիս՝ Ուրբանոս Դ պապի կողմէ պատգամաւոր եկող Տիւրոսի արքեպիսկոպոս Գուլիէլմոսի մօտ* (§ 1140), *ուր առիթ ունեցաւ համեմատութեան խնդիրներուն վրայ վիճաբանութեան մտնելու, զորս յետոյ գիրի ալ առնելով Հեթումի ներկայեց* (ՀԻՆ. 752)։ *Այս ալ նշան մըն է Հեթումի և Կոստանդինի ուղիղ հայադաւանութեան մասին, զոր վերև ջանացինք պարզաբանել* (§ 1144), *մինչև իսկ Կոստանդին յանձն չէր առած անձամբ երթալ Նուիրակին, հետևելով հոգևոր և օրինաւոր կարգի* (ՍԿԵ. 10), *թէպէտ նա կը պահանջէր իբր նշան հպատակութեան։ Սկեւռացին ալ, զոր իւր տեղ գրկած էր, պահանջեց որ Ընդունելեան անուն բնաւ մ՛ յիշեսցի* (ՍԿԵ. 9)։ *Սկեւռացիին ամբողջ գրութիւնը, որ ընդդիմաբանութիւն է Հռոմի յաւակնոտ գլխաւորութեան, պատրաստուած է ի հրամանէ Բարեպաշտին Հայոց Հեթմոյ* (ՍԿԵ. 1), *և յայտնապէս կը վկայէ հեղինակը, թէ մեծ էր խնդիրն քո քան գիր* (ՍԿԵ. 69)։ *Սկեւռացիին պատճառաբանութիւնները Հռոմայեցւոց Պետրոսական դրութեան դէմ, շատ գեղեցիկ և զօրաւոր մասեր ունին, իսկ տկար երևցած մասերը համապատասխան են Լատիններու քաշկռտուք պատճառաբանութեանց, որոց մօտէն տեղեակ եղած կ'երևի Սկեւռացին, որ նմանօրինակ զէնքերով ալ կը կռուի անոնց դէմ։*

**1148**. *Յիշատակութեան արժանի է նաև Յովհաննէս վարդապետ Տուեցի, որ առաքինական ձիրքերովը թէպէտ քահանայութեան և վարդապետութեան և յետոյ Գարդմանի արքեպիսկոպոսութեան ալ բարձրացաւ, բայց տարին զերեօ յիսնակսն անհաց և անջուր կատարելու սովորութիւնը չխափանեց։*

**ԵՐԵՔ ՅՈՎՀԱՆՆԷՍՆԵՐ**

*Վերջին տարիներ բոկ ոտիւք Երուսաղէմ գնաց, ուր բոլոր մեծպահքը Ս. Յարութիւն եկեղեցւոյն մէջ յոտն կալով և անհաց, այլ և ըստաբեամբ, զօրմացոյց զոգին Փառնչոյ։ Երուսաղէմէ դարձին Նորբերդի անապատին մէջ ճգնեցաւ մինչև ի խորին ծերութիւն* (ՎԱՐ. 155), *և վախճանեցաւ* 1263'*ին* (ՎԱՐ. 153)։ *Նշանաւոր եղած է նաև Յովհաննէս Գառնեցի վարդապետը, իւր խստակրօն ճգնութեամբ և Երուսաղէմի մէջ կատարած հրաշալիքներով, որով Տաճիկներէն ալ քրիստոնէութեան դարձողներ եղած են։ Երուսաղէմէ դառնալուն Ասորիք և Փոքր Ասիա շրջեցաւ, Կոնիա քաղաքին մէջ Տաճիկներէ հալածուելով կրակի նետուելու եղաւ, բայց վտանգէն ազատելով Հռոմկլայ եկաւ Կոստանդին կաթողիկոսի մօտ, ուր և մնաց մինչև իւր մահը ի խոր ծերութեան* (ԿԻՐ. 205)։ *Կը յիշուի նաև երրորդ Յովհաննէս Արմնեցի վարդապետ մը, որ Մխիթար Գոշի աշակերտաց յաջորդներէն, Մարտիրոսէ, Մխիթարէ, Յովսէփէ և Աբրահամէ ետքը, Գետիկի առաջնորդ եղած է, Հաղարծինի վանքէ հոն փոխադրուելով* 1256'*ին, և ապա եպիսկոպոս ձեռնադրուելով անցած է ի Քծ ոբոան ի Հոգւոյ* (ԿԻՐ. 116)։

**ՍՏԵՓԱՆՈՍ ՏԷՐՅՈՒՍԿԱՆՈՐԴԻ**

**1149**. *Յիշենք ևս Ստեփանոս Արտամետցի վարդապետը, աւելի ծանօթ Տէրյուսկանորդի մականունովը։ Տէր Յուսիկ Արտամետի քահանայ էր, որուն երեցկինը Թաթարներ գերեցին և վաճառեցին քրիստոնեայ կնոջ մը, Բիբի անուն, որուն քով վերջապէս գտաւ քահանայն իւր երէցկինը, և ազատութեան ու պարգևի գումար մըն ալ առնելով Արտամետ դարձաւ, պայմանով որ եթէ տէր Յուսիկի որդին քահանայանայ, առաջին պատարագը Բիբիի հոգւոյն համար մատուցանէ։ Անկէ ետքը ծնաւ ու մեծցաւ Ստեփան Տէր Յուսկան Որդին, որ հօրը ցորենը աղքատներու բաժնելուն համար, Արտամետէն կը հեռանայ, և Բերկրիի մօտ լերան մը վրայ ճգնարան կամ Սրգելան մը կը կազմէ*

*իրեն։ Աւելի անցնելով Սանփան զանուած է հօրմէն, բայց ճգնարանը այլ եւս չէ թողած, և քահանայանալով մօրը ազատութեան պայմանը գործադրած է, և յետոյ վարդապետ եղած, և աշակերտութիւն կազմած միեւնոյն Արգելանի վանքին մէջ։ Սրբութեամբ վախճանած է 1251՚ին, և իր յիշատակը Յայսմաւուրքի մէջ անցած է իբր սուրբ, յունուար 3 օրուան ներքեւ* (ՅԱՍ. Ա. 8), *որ իր մահուան օրը կրնայ ընդունուիլ, իսկ գերեզման նորա յետ մահուանն՝ բժիշկ էր ամենայն ախտացելոց* (ԿԻՐ. 91)։ *Մինչեւ այսօր կը մնան Բերկրիի մէջ Տէրյուսկանորդի վանքը, և մերձակայ լերան վրայ Արգելանի վանքին աւերակը։*

**1150**. *Յիշեցինք Խաչէնի իշխան Հասան Ջալալը, թէ ինչպէս Արղունի ձեռքէն ազատելով Սարթախի հովանաւորութեան ապաւինած էր, և թէ Սարթախի ասճականաւ ազգականներէն*

ՀԱՍԱՆ
ՋԱԼԱԼ

*սպաննուելովը՝ Արղուն կը զօրանար* (§1137)։ *Հասան Ջալալ, Զաքարէ և Իւանէ Օրբելեաններուն քրոջ և Վախթանգ Տօնկիկ իշխանի որդին էր, որ մօրը և Զաքարէ ու Իւանէ եղբայրներուն հետ Երուսաղէմի ուխտագնացութիւնն ալ կատարած էր, և շատ բարեպաշտ կեանք մը կ'անցընէր* (ԿԻՐ. 145)։ *Արղուն անգամ մը շատ նեղած էր զայն և ընդ բռնամ պատճառ ինչ արկեալ հարկերու պատրուակով* (ԿԻՐ. 175), *բայց Հասան Ջալալ յաջողած էր Սարթախի պաշտպանութիւնը վայելել, որուն մօտ ապաւինած էր, և իրեն հետ նաեւ Գրիգոր Տղայ ծերունի իշխանը, Դեսում երիտասարդ իշխանը, Մարկոս վարդապետ և Գրիգոր եպիսկոպոս* (ԿԻՐ. 207)։ *Երբոր Արղուն կրկին զօրացաւ, պատճառանօք պարտուց և հարկի՝ ի կալանս տարաւ Գոնցա Վրաց թագուհին, Խօշաք անոր աղջիկը, Շահնշահ Օրբելեանը՝ Զաքարէի որդին, և Հասան Ջալալ Խաչէնի իշխանը։ Առաջինները ազատեց ծանր փրկանքներով, իսկ Հասան Ջալալը չուզեց թողուլ, ու նեղէր անօրէն կապանօք, երկաթի փայտ ի պարանոցն, և երկաթս յոտսն, և այս գլխաւորապէս վասն առանց քրիստոնէութեան, որուն մեծ պաշտպան էր Հասան Ջալալ, և այս պատճառաւ Բռնադատէին նմա ամենայն տանջանօք, և յորդորէին զԱրղունն ի սպանութիւն նորա։ Հասան Ջալալի աղջիկը Ռուզուքան, ամուսնացած էր Չարմաղանի որդւոյն Բուրա զօրավարին հետ, և համարձակութիւն ունեցաւ Հուլաւունին դիմել, որ Տօղուզ տիկնոջ միջնորդութեամբ հօրը ազատութիւնը ընդունի։ Արղուն հազիւ թէ Ռուզուքանի միտքը լսեց, անմիջապէս Հասան Ջալալ Խաչենցին հրամայեց սպաննել, և երթեալ Տաճկացն անդամ անդամ յօշեցին զնա, և այսպէս մարտիրոսացաւ քրիստոնէութեան հաւատքին համար* (ԿԻՐ. 229), *իսկ մարմինը նետուած տեղէն հաւաքուելով Գանձասարի մէջ թաղուեցաւ* (ՎԱՐ. 153)։ *Թուականը* 1261 *դրուած է Կիրակոսէ* (ԿԻՐ. 230), *և թէպէտ Վարդանի մէջ* 1251 *կը նշանակուի* (ՎԱՐ. 152), *սակայն պարզ գրչագրութեան սխալ պէտք է ըլլայ, վասն զի քիչ մը ետքը կը գրէ. Ի թուին Խորհրդոյր 2 որ է կատարել հանգիստ, և Ժ ամբ, և յայսմ թուականութեան եղած է կ'ըսէ երանելոյն հանգիստը* (ՎԱՐ. 153)։

**1151**. *Միեւնոյն 1261 տարին տեղի ունեցաւ մեծ Զաքարէի որդի Շահնշահ Օրբելեանին մահն ալ։ Շահնշահի որդին Զաքարէ՝ երիցագոյն էր Աւագ և Արտաշիր և Իւանէ եղբայրներուն վրայ, և ձեռք առած էր հօրը իշխանութիւնը։*

ՈՒՐԻՇ
ՆԱՀԱՏԱԿՆԵՐ

*Ամուսնացած էր Ուխտիքի Սարգիս իշխանին աղջկան, իսկ Սարգիս ապստամբ կը նկատուէր։ Զաքարէ՝ իր ատենանց տունը կնոջը տեսութեան երթալը առիթ տուաւ Արղունի՝ Զաքարէն ալ ամբաստանել Հուլաւունի առջեւ, և զանազան բարբառս կուտելով մահուան դատապարտել տալ, անդամ անդամ յօշել և արկանել շանց։ Շահնշահ որդւոյն սպանութեան գոյժը առնելուն՝ այնչափ յուզուեցաւ, որ ի տրտմութենէն մեռաւ, և Օձուն գիւղը թաղուեցաւ* (ԿԻՐ. 231)։ *Ասոնց մահերն ալ քրիստոնէութեան համար նահատակութիւններ նկատուած են։ Սեւադա իշխան մըն ալ, որդի Գրիգոր Տղայ ծերունի իշխանին, զոր վերեւ յիշեցինք, Մուֆարղինի պատերազմին մէջ սպանուեցաւ, և անոր համար ալ գրուած է թէ մասն հասցէ արեամբ նահատակացն Քրիստոսի* (ՎԱՐ. 152)։ *Նահատակներուն կարգին պէտք յիշուի նաեւ Սանփանոս վարդապետ, Գերե-*

թինի ծերունի վանահայրը, որ շատ կերակուրներով ու ըմպելիներով մեծարած էր Թաթարներու գունդ մը, սակայն նոյն գիշեր գլխաւորը «ձեռն խոցոք և անյագ ուտելեօքն և ըմպելեօքն» կը հիւանդանայ, և երբ թէ վարդապետը զայն թունաւորած ըլլայ, չորս ցիցերու պրկելով «ոտիցն և ձեռացն, մինչեւ տանջանօք ընկեցին» (ՆՈՐ.99)։ Մաղաքիա աբեղայ որ զայդ կը պատմէ, 1257'ին կը դնէ Ստեփաննոսի նահատակութեան թուականը (ՄԱՂ.23)։

---

# Տ. ՅԱԿՈԲ Ա. ԿԼԱՅԵՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՈՒ ՆԱԽԸՆԹԱՑ**

**1152.** Կաթողիկոսական ընտրութիւնը քիչ մը ատեն ուշացաւ, որովհետեւ այնչափ մեծ էին երկրին տակնուվրայութիւնը, և մայրաքաղաքին աւերածը, և ազգային չփոթութիւնը ու Հեթումի սուգը, որ դատարկուած աթոռին մտադրութիւն դարձնել շատ ատեն կը մնար։ Հեթում շարունակ՝ մէկը սպանուած, միւսը գերութեան գացած զաւակներուն ցաւովը տառապեալ էր, և Ակների վանքը կը յաճախէր հոգեւորական մխիթարութիւն գտնելու (ՀԱՅ.474)։ Աստուածայայտնութեան տօնին ալ Մամեստիոյ մէջ, «որք էին Լեւոնն և Թորոսն» հեծելազօրքներովը. բոլոր ներկայ եկեղեցականներն ու իշխանները կը լացնէր (ՀԱՅ.475)։ Ինն ամիսներ կը լրանային Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին 1267 ապրիլին վախճանելէն ի վեր (§ 1143), բայց ընդհանուր սուգին հետ խառնուելովը, յաջորդի ընտրութեան հոգածութիւնը մոռցուած էր, բայց խաղաղ ալ աթոռը պարապ թողուլ հնար չէր։ Փորձերուն պահանջը ստիպեց ընտրողական ժողով գումարել Մըսիսի մէջ, որ է նոյն իսկ Մամեստիա քաղաքը, և որ Սիսի աւերածէն ետքը պետութեան կեդրոն էր եղած։ Ժողովին եկողներուն համար «յԱրեւելից մինչեւ ցԿիլիկիա» ըսուիլը (ՍԻՍ.249), արեւելեան եպիսկոպոսներուն ալ մասնակից եղած ըլլալը կը ցուցնէ, և գուցէ անոնց սպասելնին ալ յապաղման պատճառներէն մին եղած էր։ Ժողովը գումարուեցաւ և կաթողիկոս ընտրուեցաւ «Ճառասաց վարդապետն Յակոբ», և հանդիսապէս օծուեցաւ 1268 փետրուար 12'ին, Բուն Բարեկենդանի նախընթաց, Սահակ Պարթեւի և Ղեւոնդեանց ու Վարդանանց տօներուն մէջտեղ հանդիպող կիրակին (ՍԻՍ.249)։ Նորընտիր կաթողիկոսը յիշած ենք արդէն երկիցս Կոստանդնուպոլիս Յոյներու հետ միաբանական բանակցութեանց երթալուն առթիւ (§ 1135)։ Իրեն անխտրաբար տրուած Սսեցի, Տարսոնցի և Կլայեցի անունները չեն ներեր որոշել թէ որը իր ծննդավայրն և որը իր պաշտօնավայրն եղած է, բայց աւելի գործածական եղած է Կլայեցի կոչումը (ՏԱԹ.638), և զայն մենք ալ ընդունած ենք։ Իսկ այս կոչման հիմ կը նկատենք Հռոմկլայի հայրապետանոցին մէջ մնայուն պաշտօնավարելը, երբ կաթողիկոսին օգնական, մեծ բանագնացութեանց պատուիրակ (§ 1090), բացակայութեան ատեն տեղը բռնող (§ 1138), և անշուշտ կաթողիկոսութեան ալ տեղակալ՝ աթոռին 10 ամիսներ պարապ մնացած միջոցին։ Նա անխտիր կոչուած է Գիտնական (ՍԱՄ.151) և Հռետոր որ իր ուսումնական կարողութեան ապացոյցն է, և որով «Քերթողն յոքունց կոչեալ» ըսուելու արժանացած է (ՎԱՀ.227)։ Արդէն Մեծքարի վարդապետանոցին առաջնորդ եղած ըլլան ալ (ՍԻՍ.196), նոյն բանը կը հաստատէ։ Իսկ Արեւելեայց մասնակցութեամբ ընտրուիլը՝ անխտրական և անկեղծ հայադաւան ուղղութեան յայտարարն է։

**ԱՐԴԻՒՆՔ ԵՒ ԱՐԺԱՆԻՔ**

**1153.** Յակոբի համար կը կարդանք, թէ «[illegible]» (ՍԱՄ.151), բայց իրմէ գրուած այսպիսի աշխատութիւն մը մեզի հասած չէ, և երբ իր գրական կարողութեան նմոյշ ունինք միայն Աստուածածնայ ծննդեան «Սրբեցէք» շարականը

(ՏԱԹ·638), *որ իր գեղեցիկ ոճովը ու վսեմ իմաստներովը մեծ փառք մը կ'ընծայէ Յակոբի արժանիքին։ Սոյն չարականին յօրինուածը կը ցուցնէ միանգամայն Աստուածածնայ ծննդեան տօնին սկսելուն ժամանակը, վասնզի Աստուածածնայ տօներէն միայն անոր Ննջման կամ Փոխման կամ Վերափոխման յիշատակութիւնն էր, որ նախապէս Հայ եկեղեցւոյ մէջ կը կատարուէր, իսկ Աւետումն ու Տեառնընդառաջը իբր Աստուածայայտնութեան յարակից կը նըկատուէին։ Այլ թէ Յակոբ իբր կաթողիկոս զայն կարգադրեց և չարականն ալ յօրինեց, թէ Կոստանդին կարգադրեց և Յակոբ պատշաճը գրեց, ճշդել դժուար է, որոշակի գրուած յիշատակ մը չգտնուելուն։ Յակոբի պէս ուսումնական անձի մը վայել էր Ընդհանրական գիր մըն ալ պատրաստել, և պարտուպատշաճ հրահանգներն ու հրամանները տալ եկեղեցական բարեկարգութեան կանոնները յիշեցնելով, և այդ միտքը ունեցած ըլլալը պատմական յիշատակներէ կը քաղուի։ Միայն թէ հայրապետանոցի դիւանին մէջ գտնելով Ներսէս Կլայեցիի նշանաւոր Ընդհանրականը* (§ 963), *և հիմնալով անոր պարունակութեան վրայ, պէտք չէ տեսած իր կողմէն նոր մը խմբագրել, և գոհացած է զայն արտագրել տալ բազմաթիւ օրինակներով, և զայն հաստատող և անոր ընթերցումը հրամայող թուղթ մը իր կողմէն աւելցնելով ցրուած է բոլոր գլխաւոր վիճակները և հայրենակութեան կեդրոնները* (ՋԱՄ·Գ·268)։ *Յակոբ Կլայեցիին կողմէ Ներսէս Կլայեցիի մասին ցուցուած այս յարգանքը, պէտք չէ երբեք ձախողակի մեկնութեան տանիլ, իբր թէ նոր աշխատութենէ խուսափելու նպատակով եղած ըլլայ, որովհետև այդպիսի աշխատութիւն մը երբեք ծանր պիտի չգար Գիտնական կաթողիկոսի մը։ Մինչ միւս կողմէն մեծապէս գրուատելի պէտք է ըսել, նախնեաց յիշատակին հանդէպ ցուցուցած ակնածանքը, և ճշմարիտ արժանեաց համար վկայած անկեղծ գնահատումը։*

**1154**. *Երբ այդ ամէնը Կիլիկիոյ մէջ տեղի կ'ունենար, Թագաժառանգ Լեւոնը Եգիպտոսի մէջ գերի կը մնար։ Եգիպտացի բանակը* 15 *օր Կիլիկիան ամբողջ աւերելէ և աւարելէ ետքը ճանպայ ելած էր, Լեւոնն ալ կալանաւոր տանելով* (§ 1142), *որպէս զի Փնտուխտար սուլտանին ներկայացնէ, որ չէր ընդ ձեռըն եկեալ։*

ԼԵՒՈՆԻ ԳԵՐԵԴԱՐՁԸ

*Սուլտանը Լեւոնի զիմաստուն բանս լուեալ, զնա սիրով մեծաւ պատուեալ էր, և հրաման ալ տուած էր որ Երուսաղէմի ուխտագնացութիւնը կատարէ իբր կալանաւոր, և անկէ յԵգիպտոս յառաջացեալ էր, և անդանօր ի բանտ ածեալ էր չղթայակապ արքայորդին* (ՎԱՀ·225), *որ երեսնամեայ էր եղեալ այդ միջոցին։ Լեւոն բանտին մէջ համբերատար և հոգեսէր կեանք մը ունէր, որ զաղօթսն ի ժամն չարժեց, և ի կոչանոց զնա ածեալ, և մերձ առ ինքն մեծարեալ պահեց* (ՎԱՀ·226)։ *Կ'ուզէր իսկ անոր ազատութիւնը շնորհել, բայց կը սպասէր որ առաջին քայլը Հայոց թագաւորին կողմէն ըլլար։ Հեթում ընդհակառակն յուսալով որ Արեւմուտքէն ու Արեւելքէն, Լատիններէն ու Թաթարներէն օգնութիւն պիտի հասնի, և Եգիպտացւոց վրայ յաղթութեամբ մը պիտի կարենայ զաւկին ազատութիւնը կարգադրել. երկար ատեն դիմումի գաղափարը չունեցաւ, մինչև որ տարիուկէս անցաւ վրան, և այլեւս յուսահատ եղաւ երկու կողմէն ալ գալիք օգնութեանց վրայ։ Այն ատեն միայն ստիպուեցաւ Հեթում, իր զաւկին ազատութեան համար Եգիպտոսի սուլտանին դիմումներ ընել։ Փնտուխտար Պաղեստին գտնուած էր, քաղաքին Հալաւունէ գրաւուած միջոցին* (§ 1137), *այլ յաջողած էր փախչիլ Սղըր անուն երիտասարդ ազգականին հետ։ Թաթարներուն հետապնդած ատենը՝ Սղըր իր լաւ ձին Փնտուխտարի էր տուած արագ փախչելու համար, վստահանալով որ եթէ ինքն տկար ձիով գերի ալ իյնայ Թաթարներ իրեն մանկութեան կը խնայեն և չեն սպաններ, և այսպէս ալ եղած էր։ Բայց Փնտուխտար իրեն պարտք մը կը սեպէր Սղըրը գերութենէ ազատել* (ՋԱՄ·Գ·265), *և երբոր Հեթումի դիմումը ստացաւ, պայման դրաւ փոխանակել զայն Սղըրի հետ, որուն անունը Սղուր* (ՋԱՄ·Գ·255), *և Սնգաղըար* (ՋԱՄ·Գ·268), *և Սանկոլասար* (ՀԵԹ·52) *և Սնգալաչար ալ* (ԿԱԼ·395) *գրուած է։ Հեթում*

*պարտաւորուեցաւ դիմել Ապաղա խանին Աղբբի ազատութեան համար, զոր խանը սիրով շնորհեց բարեկամը մխիթարելու համար, և այս փոխանակութեամբ և բերդ մը տալով ու երկուք ալ քանդելով, ու Երջանիկ դարձին եղեւ, և ըղձալութիւնն կատարեւ (ՎԱՀ·226), յաջողեցաւ Հեթում իւր թագաժառանգ որդին ազատել: Կայանոս կը համարձակի Հրաշալի և անհնար կոչել այդ դարձը (ԿԱԼ·394). որով Հայերը Լատիններու հետ ունեցած դաշինքնին խզած պիտի նկատուէին, սակայն մենք աւելի վնասակար և անիրաւ կը գտնենք, Հայերուն Լատիններէն հրապուրուելով՝ նորէն Եգիպտացւոց հետ թշնամանալնին, որով հետըզհետէ իրենց վտանգը և կործանումը պատրաստեցին Եգիպտացիներուն երեսէն: Երանի թէ այն մեծ ուրախութեանն, որ եղեւ հօրն և աշխարհին Հայոց (ՍԱՄ·151), և որով Հայեր բովանդակ ընդդէմ երթեալ և ցնծութեամբ Լեւոնը տեսեալ կ'ուրախանային, անփոփոխ մնացած ըլլար, և անգամ մը որ Եգիպտացւոց կողմէ հալածուած էին, կրկին անոնց ցասումը չհրաւիրէին: Լեւոնի գերութեան տեւողութիւնը ամ մի և կէս ամի եղած (ՎԱՀ·226), և գերութիւնն ալ 1266 օգոստոսին հանդիպած ըլլալով (§ 1142), 1268 յուլիսին պէտք կ'ըլլայ դնել անոր ազատութիւնը, և աւելի ճշդութեամբ, յունիս 24'ին կը դրուի Դամասկոսէ ազատ թողուիլը (ՄԽՍ·555):*

**ՀԵԹՈՒՄԻ ՄԱՀԸ**

**1155.** *Ցակոբ կաթողիկոս դեռ քանի մը ամիս առաջ աթոռ բարձրացած էր, և բարեգուշակ պարագայով մը կը սկսէր իւր հայրապետութիւնը: Հեթում որդէն շատ յագնած, և վերջին արկածներէն աւելի եւս զգածուած, հոգին թէ զկեան յետին աւուր, անմիջապէս զհայրապետն յառաջ կոչեալ, այն որ Յակոբ էր անուանեալ, կ'առաջարկէր և կը ստիպէր, որ ինքն բոլորովին գործէ քաշուի, և թագաժառանգը Թագաւոր լնել օծել, ինչ որ սակայն Լեւոն, Թէեւ բազում անգամ արկեալ, չընդունեցաւ և բնաւին յանձն չառնել մերժեց (ՎԱՀ·227): Կաթողիկոսին ալ հնար չէր կատարել այնպիսի առաջարկ մը, որ ազգը կրնար զրկել կարող և փորձառու վեհապետի մը հովանաւորութենէն: Սակայն Հեթում Ապաղայի այցելութեան և շնորհակալութեան երթալու պատրուակով Կիլիկիայէ մեկնեցաւ դէպի Դավրէժ, ուր կը գտնուէր Թաթար խանը, և Լեւոնի հարկ եղաւ թագաւորութեան գործերը ստանձնել, 'նթէ ոչ թագաւորի անունը: Հեթումի դառնալէն ետքը նորէն կը կրկնուէին հրաժարելու առաջարկները, բայց այս անգամ ալ պատշաճ դատուեցաւ, որ Լեւոն ինքն ալ Ապաղայի մօտ երթայ, թէ շնորհակալութիւն յայտնելու և թէ իբր ապագայ թագաւոր Հայոց, անոր հետ անձնապէս բարեկամական յարաբերութիւններ հաստատելու, և այսպէս 1269'ին Լեւոն ալ Կիլիկիայէ մեկնեցաւ, և երկրին կառավարութիւնը Հեթումի ձեռքը մնաց: Միայն Լեւոնի վերադառնալէն ետքն է, որ Հեթում վերջնականապէս ձեռք քաշեց թագաւորական և աշխարհական գործերէն, և հրաժարեցաւ ի շուք կենցաղոյս եմուտ ի կրօն (ՀԵԹ·52), և մեծաւ զղջմամբ կրօնաւոր եղեւ Մակար անուանեցաւ (ՍԱՄ·151): Որչափ ալ Հեթում կրօնաւորի սքեմ հագնելով և անունն ալ փոխելով իրապէս հրաժարած եղաւ թագաւորութենէ, սակայն Լեւոն ոչ մի կերպով յանձնառու չեղաւ թագն ու անունը ստանձնել, այլ պարզապէս Առաջ պարոն անունով սկսաւ վարել թագաւորական իշխանութիւնը, իբրեւ խնամակալ կամ տեղակալ արքունական գահին: Հեթումի առանձնացած տեղը Ակների վանքն էր (ՄԽՍ·154), Հեթումի ամերոջ մեծին Լեւոնի ծաղկեցուցած սրբավայրը (§ 1096), ուսկից կը յայտնուի թէ պարզ հայկական վանականութիւնն էր Հեթում Առաջինի միանձանց կարգ ընկալեալ (ՎԱՀ·227) կրօնաւորիլը: Կարծես թէ նախազգացութեամբ մը Հեթում մօտալուտ տեսած էր իւր վախճանը, զի վանք առանձնանալէն յետ սակաւ ժամանակի հանգեաւ խաղաղութեամբ յամին 1270, ինչպէս կը գրէ Հեթում պատմիչը (ՀԵԹ· 52), և կը ձայնակցին թուականին մասին Սմբատ ալ (ՍՄԲ·125), Անեցին շարունակողն ալ (ՍԱՄ·151), թէպէտ Ցայսմաւուրքը 1271 կը դնէ: Օրուան մասին ալ Ցայսմաւուրքը մայիս 22, չորեքշաբթի կ'ըսէ (ՅԱՍ·Ա·229), զոր ուրիշներ հոկտեմբեր 25ին (ԹՈՐ·Բ·382) կը դնեն. մենք ալ, ինչպէս և Ցայսմաւուրքը ուրիշ տեղ (ՅԱՍ·Բ·209) հոկտեմբեր 28'ին*

նշանակէն, կրօնաւորին ալ միայն ութն օր առաջ նոյեմբեր 20'ին նշուելով (ՍԻՍ. 555), որ չատ չյարմարիր պատմիչին «յետ աւուր ժամանակի» բացատրութեան։ Այդ վերջին թուականները ստուգելու միջոցները չունինք, սակայն, թէ 1270'ին և թէ 1271'ին մայիս 22'ը չորեքշաբթիի չիյնար, այլ 1270'ին Համբարձման հինգշաբթի օրն է, և 1271'ին Հոգեգալստեան նախընթաց ուրբաթին կը հանդիպի, նոյնպէս 1270 նոյեմբեր 28'ն ալ երեքշաբթիի կ'իյնայ։ Ուստի մահուան օրը ճշդելը նոր հետազօտութեանց թողլով, իբր հաւանական կ'ընդունինք 1270 մայիսին կրօնաւորիլը, և նոյեմբերին վախճանիլը։ Իսկ թաղումը եղաւ Դրազարկի վանքը արքայական դամբաններուն կարգը, ուր «օրհնաբանեալ եդեալ բարձեալ» բերին (ՎԱՀ. 227), և մեծահանդէս յուղարկաւորութիւն կատարեցին։ Հեթում Զապելի հետ ամուսնանալով 1226'ին թագաւորութեան բարձրացած էր (§ 1105), որով 45 ամբողջ տարիներ իշխանութիւն վարեց, և պարզ գրչագիրի սխալ պիտի ըլլայ տեղ մը «ամս հնգետասան թագաւորեաց» գրուած ըլլալը (ՀՏԹ. 52)։ Յակոբ կաթողիկոս որ քիչ առաջ, Լեւոնի գերեդարձին նախագահած էր, Հեթումի մահուան տխուր յուղարկաւորութիւնը պատարագելու կատարել, որ արդարեւ նկատուեցաւ, զի հակառակ երկարատեւ իշխանութեան, տակաւին 58 տարեկան էր Հեթում, և դեռ կրնար երկրին բարօրութեան ծառայել։

**ԼԵՒՈՆԻ ՕԾՈՒՄԸ**

**1156.** Բոլոր պարագաները կշռելով, անտեղի չէր արքայորդի Լեւոնին անմխիթար տխրութիւնը, որ «այնքան սուգ առեալ, մինչ մահու չափ հիւանդացեալ», չէր հաւանէր «առժամայն թագաւորել, այլ երեք ամս սուգ առեալ. տկար անձամբ և հալացեալ» օրեր կ'անցընէր, ընդդիմանալով իրայնոց ալ՝ որք թագաւորութեան և օծման փութացումը կը պահանջէին, նոյն իսկ պետական գործոց կանոնաւորութեան և արտաքնոց առջեւ ազդեցութեան համար։ Երբոր ամէն կողմէ թախանձանքներ կը շատնային, նամանաւանդ յարգանք կը յղէին նաև Փոստխատոր որ «յիշեցուցանօղ կոչեալ», և Սապուղս որ «խանն էր անուանեալ», եւս և Միքայէլ Պալէոլոգ որ 1261'ին յունական կայսրութիւնը վերանորոգած էր Կոստանդնուպոլսոյ մէջ՝ Լատինները հեռացնելով։ Վերջապէս Լեւոնի դըժկամակութիւնը յաղթուեցաւ, և Յակոբ կաթողիկոս գլուխ կանգնեցաւ հասարակաց բաղձանքին կատարման, և «զզօրական Հայոց ժողովեալ, և զեկեղեցայն լուսաբերսն բերեալ» հաւաքեց Տարսոնի մէջ, և «անդանօր զնա օծեալ», արքունի գահին վրայ նստեցուց Ռուբինեան հարստութեան երրորդ թագաւորը՝ Լեւոնէ և Հեթումէ ետքը (ՎԱՀ. 228), ինքն ալ բախտակից ըլլալով Գրիգոր Ապիրատի, (§ 1064) և Կոստանդին Բարձրբերդցիի (§ 1105) զգացած մխիթարութեան։ Լեւոնի օծման օրը կը նշանակուի 1271 յունուար 6 (ՍԻՍ. 270), և եթէ «երեք ամս» սուգ բռնած ըլլալը հաշուի առնենք, կը հաստատուի Հեթումի նախընթաց նոյեմբերին վախճանած ըլլալը, Միանգամայն կրնայ արդարանալ պատմագիրներուն 720 Հայոց թուական յիշելն ալ (ՍՄԲ. 125. ՍԱՄ. 152), զի եօթն օր ետքը 1271 յունուար 13'ին կը սկսէր Հայոց ամանորը լատինական կաղանդէն չատ քիչ տարբերութեամբ։ Լեւոն Հեթումեան նոր պատմութեանց մէջ երբեմն Բ և երբեմն Գ թուահամարով կը կոչուի։ Հիները չունէին համանունները թուահամարով որոշելու սովորութիւնը, և նոր պատմութիւնգրողներ սկսան պատշաճեցնել զայն հիներուն վրայ։ Ռուբինեանց մէջ երրորդ Լեւոն էր Հեթումեանը, Կոստանդինեանէն (§ 934) և Ստեփանեանէն (§ 1019) ետքը, և այդպէս ալ Լեւոն Գ անունով կոչեցին առաջինները (ՉԱՄ. յաւ. 85), այլ վերջէն նորեր Կոստանդինեանէն լոկ իշխանապես և Ստեփանեանին առաջին թագաւոր ըլլալը նկատողութեան առնելով, Լեւոն Բ կոչեցին Հեթումեանը (ՍԻՍ. 555), թէպէտ և ուրիշ տեղ ալ զանց չեն ըրած Լեւոն Ա կոչել Կոստանդինեանը (ՍԻՍ. 45)։ Մեզի յաւագոյն կ'երեւի Կոստանդինեանը թուահամարէ չհանել, և Լեւոն Գ կոչել Հեթումեանը, և այսպէս չարունակել յաջորդ Լեւոնները։ Լեւոն Գ ալ ոչ նուազ նշանաւոր եղաւ իր գործունէութեամբ, քան Լեւոն Բ Ստեփանեան առաջին թագաւորը, և որչափ ալ իրեն մըտերիմն ըլլայ իր գովարան Վահրամ Րա-

քունքին, սակայն պատմած խրատ-Ափ-ինները ճշմարիտ արդիւնքներ կը պարունակեն (ՎԱՀ. 229—230), զոր համառօտելով կը կրնանք ստորագրողը, թէ էր այր հեզ և երկայնամիտ և ծածկող, հաշտարարեալ և զուարթ, ողորմած և անոխակալ բողոքելոց, ուրեր ընկեղեցէ, գիտնօրայ և ընկեղեցուցանէ: Եւ իբրեւ յատուկ արդիւնք կը յիշուի, թէ Մեծքարի վանքը տան նորքեաց վարդապետաց վան վարժելոց զմանկանս (ՍԱՄ. 152), կամ ուրիշ բացատրութեամբ, նոր վարդապետանոց կամ դպրեվանք մը հիմնարկեց Մեծքարի մէջ, ինչ որ կանուխէն ըրած մի գործը պիտի ըլլայ, վասնզի Յակոբ անոր առաջնորդն էր եղած կաթողիկոսութենէ առաջ (§ 1152): Հարկաւ այդ վերջին կարգադրութեանը համար իրեն թելադրող եղաւ ուսումնասէր և ուսումնական կաթողիկոսը: Դիտուած է որ մեզի հասած գրչագիրներէն շատեր այդ միջոցին կը պատկանին, և հին յիշատակներն ալ կը նշանակեն գիրքերու օրինակներ շատցնելու և ամէն կողմ, մինչեւ իսկ Խտայիոյ Հայ գաղթականութեանց (ՀԱՅ. 485), տրուելու համար Լեւոնի և Յակոբի համամիտ ջանքերը, որ հաւատարապէս պատիւ կը բերեն Գրաւէր Թագաւորին և Գիտնական կաթողիկոսին (ՍԻՍ. 519):

**1157.** Լեւոն Գ բաւական դժուար կացութեան ներքեւ կը գտնուէր, քաղաքագիտական տեսակէտէն երեք տարբեր և ներհակ ազդեցութեանց ներքեւ ճնշուելով: Եգիպտացիք յայտնի թշնամիներ էին, և լատին քրիստոնեայ իշխանութիւնները Ասորիքէ բնաջինջ ըլլալու սպառնացած ատենին՝ ոչ քէ չէին վրիպեցներ Հայերն ալ, որ քրիստոնեայ ու Լատիններու հետ սերտ յարաբերութեան մէջ էին, և անոնց ձեռքին ներքեւ կը նկատուէին՝ Լեւոն Բ'ի օրէն հաստատուած ուսատական և գերիշխանական դրութեան զօրութեամբ (§ 1055): Բայց միւս կողմէն բարեկամական դաշնագրութիւն մը կնքուած էր Փոստ-խատարի և Հեթումի միջեւ, և անով միայն կրցած էր Լեւոն գերութենէ ազատուիլ և իշխանութեան անցնիլ (§ 1154), և չէր կրնար երբեք զայն մոռցութեան տալ: Միւս կողմէն Թաթարները և Հայերու մի-

### ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹԻՒՆ

ջեւ կանխաւ հաստատուած բարեկամութիւն և դաշնակցութիւն մը կար. որ նորոգուած ալ էր նոյն իսկ Լեւոնի ազատութենէն և Եգիպտացիներու հետ հաշտութիւն և բարեկամութիւն կնքելէ ետքը: Սակայն Թաթարներ միշտ թշնամի մնացած էին Եգիպտացիներու, և Հայերն ալ իրենց նիզակակից գիտնալով, զանոնք հրաւիրած էին զինուիլ 1269'ին, երբ Ապաղա խան Եգիպտացիներու հետ պատերազմը նորոգել կը մտածէր (ՍԻՍ. 555): Լատիններ միշտ ինքզինքնին Հայերուն վրայ գերիշխան կը ճանչնային Լեւոն Բ'ի թագադրութեան առթիւ ըստացուած իրաւունքով, և իրենց կէտ նպատակի ունենալով Երուսաղէմի ազատութիւնը և խաչակրութեան արշաւերքէն, գոնէ Պաղեստինէն և Ասորիքէն հեռացուիլը: Միշտ կը մտածէին խաչակրութիւնները նորոգել, և երբ քրիստոնեայ բանակին յառաջամարտիկ և օգնական կը նկատէին Հայոց Կիլիկեան թագաւորութիւնը: Հայերէն ալ կը պահանջէին Եգիպտացիներու դէմ պատերազմի ելլել, բնաւ կարեւորութիւն չտալով Հեթումի կնքած հայեգիպտական դաշնագրութեան, զոր Փառակաց Եանէրա կը դատէին (ԿԱԼ. 394), և այս տեսութեամբ պապը զայն իբր չեղեալ, և Հայերն ալ անոր պահպանութեան պարտաւորութենէն ազատ կը նկատէր: Եգիպտացիներ՝ թէ Թաթարներէն և թէ Լատիններէն հաւասարապէս թշնամի նկատուած ատեն, անուղղակի բարեկամութիւն մը կը ծագէր այս վերջիններուն միջեւ, չահի նոյնութեան տեսակէտէն, թէպէտ շատ հեռու էին կրօնի և ազգի, կրթութեան եւ նպատակի տեսակէտով: Յոյներ այդ միջոցին առանձին ազդութիւն չունէին: Միքայէլ Ը Պալէոլոգ, որ յաջողած էր կայսերական գահը գրաւել 1260'ին Յովհաննէս Դ Լասկարիս մանուկ կայսրը կուրացնելով, և յաջորդ տարին ալ Նիկիայէ Կոստանդնուպոլիս փոխադրուած էր, Բաղդուինոս Բ լատին կայսրը հալածելով բոլոր մտադրութիւնը դարձուցած էր հաշտարար յարաբերութիւններով իր դիրքը ամրացնել, և այս նպատակով Հռոմի հետ ալ միարանութեան բանակցութիւններու սկսած էր, որպէսզի Լատիններու գրգռութեան առջն առնէ, և այլեւս Կոստանդնու-

պոլսոյ կայսրութեան վրայ աչք չդարձնեն։ Ըստ այսմ յունական ուղղութիւնը կերպով մը լատինականին կը խառնուէր, և Լեւոնի և Հայերու համար չորրորդ տեսակէտ մը չէր կազմեր։

**ԼՈՒԳԴՈՒՆԻ ԺՈՂՈՎԸ**

**1158.** *Լուդովիկոս Թ Գաղղիոյ թագաւորը, 1248'ին փորձած խաչակրութեան ձախողելէն ետքը* (§ 1131), *Սուրբ Տեղեաց ազատութեան խորհուրդը չէր լքած, ուստի նոր խաչակրութիւն մըն ալ ձեռնարկեց 1270'ին, որ ութերորդն ու վերջինը եղաւ։ Այս անգամ ալ արշաւանքը Թունուզէն սկսաւ, բայց ժանտախտի բռնուելով մեռաւ օգոստոս* 25'*ին, քաղաքին պաշարման ատեն, և խաչակրութիւնը ապարդիւն մնաց։ Սակայն Սուրբ Տեղեաց խնդիրը դեռ արեւմտեան երեւակայութիւնները կը բորբոքէր։ Գրիգոր Ժ պապ* 1271'*ին աթոռ բարձրանալով, սկսաւ մեծ եռանդով նոյն նպատակին հետեւիլ, և* 1273'*ին մեծ ժողով մը հրաւիրեց Լուգդունի մէջ գումարուելիք, որուն մէջ պիտի յուզուէին Արեւմուտքին եկեղեցական բարեկարգութեան խնդիրէն զատ, Յոյն և Լատին եկեղեցիներու միաբանութեան, և Սուրբ Տեղեաց ազատութեան հարցերը։ Գրիգոր պապ ամբողջ արեւելքն ալ այդ ժողովին հրաւիրեց, ուր Յոյն կայսրութեան և Յունական եկեղեցւոյ ներկայացուցիչներէն զատ՝ կ'ուզէր որ գտնուէին Հայոց թագաւորն ու կաթողիկոսն ալ, որոնց առանձինն առանձինն գրեց* (ԿԱԼ. 397), *և մինչեւ իսկ Թաթարաց խանին հրաւիրագիր ուղղեց։ Լուգդունի Բ'րդ ժողովը, որ Լատիններուն ԺԴ տիեզերականը կը սեպուի, բացուած է* 1274 *մայիս* 7'*ին պապին նախագահութեամբ, և* 500 *եպիսկոպոսներու և* 1000 *վանահայրներու և վարդապետներու ներկայութեամբ, և Սպանիոյ ու Գաղղիոյ թագաւորներուն և Յունաց կայսեր և Թաթարաց խանին պատգամաւորներուն մասնակցութեամբ։ Առաջին նիստին մէջ որոշուեցաւ եկեղեցական հասոյթներուն տասանորդը վեց տարի շարունակ Սուրբ Տեղեաց ազատութեան գործածել։ Մայիս* 18'*ի և յունիս* 7'*ի նիստերը լատինական բարեկարգութիւններով զբաղեցան։ Յունիս* 29'*ի տօնախմբութիւնը և յուլիս* 6'*ի նիստը Յունաց հետ միաբանութեան կէտերը որոշելու և հրաչակելու անցան։ Յուլիս* 6'*ին Թաթարաց խանին պատգամաւորներէն մէկը մկրտուեցաւ, և վերջապէս նոյեմբեր* 1'*ին հանդիսաւոր փակումը տեղի ունեցաւ։ Այդ մանրամասնութիւնները յիշելով նպատակնիս է դիտել տալ, թէ ժողովական գործերու մէջ* (ՊԵԼ. Ա. 1194—1202) *բնաւ Հայերու անունը յիշուած չէ, և չենք գիտեր թէ ուստի քաղուած է Լեւոնի պատգամաւորներուն Լուգդունի ժողովին գտնուիլը* (ՍԽՍ. 555), *զոր ոչ ոք, նոյն իսկ Կալանոս ալ* (ԿԱԼ. 397) *չյիշեր, և ուրիշներ ալ գրած են, թէ Հայոց կողմէ զինչ դաւանեալ իցէ, ոչ գիտեմ* (ՁԱՄ. Գ. 271)։ *Բայց եթէ ընդունինք ալ, թէ Լեւոնի արքունի պատգամաւորները Կիլիկիայէ Լուգդուն գացած ըլլան, յայտնի կը վկայուի, թէ Հայեր լոկ քաղաքական գործունէութիւն մը նկատած են Լուգդունի ժողովը, և եկեղեցական կերպով չեն մասնակցած և եկեղեցական կարեւորութիւն չեն տուած։ Այս տեղ հնար չէ առանց դիտողութեան անցնիլ Յակոբ Բ կաթողիկոսի զգուշաւոր և ճարտար ընթացքը, որ հեռուէն զննելով Լատիններուն և Յոյներուն միջեւ մշակուած միաբանական յարաբերութիւնները, և տեսնելով Միքայէլ Պալէոլոգ կայսեր համարձակ կերպով Լատիններուն մօտենալը, խոհականութիւն սեպած է լաւութեամբ անցընել պապական հրաւէրը, ոչ պատասխանել և ոչ պատուիրակ ղրկել, և ոչ ալ ժողովին մասնակցիլ, և այսպէս անցընել պարագաներու սափողականութիւնը և հարկեցուցիչ բռնադատութիւնները, որոնց Յոյներն ալ գլուխ ծռելու կը պարտաւորուէին, վերահաս վտանգներէ զերծ մնալու համար։ Նոյն եղած է Լեւոնի ալ ընթացքը, որ ըստ ամենայն հաւանականութեան համաձայնած է հայրապետին՝ ներկայացուցիչ չղրկելու մասին, բայց եթէ ինքը ղրկած ալ ըլլայ, առանձինն եւ լոկ քաղաքականապէս մասնակցելով, խուսափած է եկեղեցական միութեան վտանգէն, և ազատ և անխառն պահած է հայադաւանութեան սկզբունքը։ Այս եղած է Յակոբի և Լեւոնի օրերուն տիրող ուղղութիւնը։*

**1159.** *Պատմած ենք Սմբատ Օրբելեանի*

*Թաթարաց հովանաւորութեան ներքեւ Սիւնեաց նահանգին վրայ իշխանութիւն վարելը* (§ 1132)։ *Սմբատի եղբայրներէն մեռած էին Իւանէ և Եղիկում, մէյմէկ զաւակներ թողլով,*

**ՕՐԲԵԼԵԱՆՔ ԵՒ ՏԱՐՍԱՅԻՃ**

*Բուրթէլ Իւանեան և Լիպարիտ Եղիկումեան, Փախրադաւլ ալ վաղամեռիկ եղած էր անորդի. Բուրթէլ ալ 1261'ի պատերազմին ըսպանուած էր, Լիպարիտ շատ պզտիկ էր, և* մնայր Սմբատայ ազնուական՝ միայն կրտսեր եղբայրն իւր Տարսայիճ, *որ ամուսնացած էր արաբացի իշխանի մը Արուզ կամ Արուսակ աղջկան հետ,* որ եղեւ երկիւղածեայ և երեւելի հաւատով և երկիւղած յԱստուած։ *Տարսայիճի զաւակներն եղան Եղիկում, Սմբատ և Փախրադաւլ* (ՕՐԲ. Բ. 162), *որոնցմէ Սմբատը,* Սմբատ որդեգրացեալ Խանէն, տայ յառաջն գրոց և ի հրահանգս թագաւորութեան (ՕՐԲ. Բ. 166), *և սա է Սմբատ Օրբելեան, արքեպիսկոպոս և պատմիչ Սիւնեաց։ Սմբատ հաւատարապէս սիրելի էր Հուլաւուն և Աբաղա խաներուն, ստէպ անոնց մօտ կը գտնուէր, և այդ այցելութիւններէն միոյն առեն վախճանեցաւ Թավրէժի մէջ, իր մօտ ունենալով վերջին պահուն Շալուէ վարդապետ մը* (ՕՐԲ. Բ. 166), *իսկ մարմինը փոխադրուեցաւ ու թաղուեցաւ Նորավանքի մէջ* 1273'*ին* (ՕՐԲ. Բ. 167), *և անորդի ըլլալուն իշխանութիւնը անցաւ Տարսայիճ եղբօրը։ Սմբատի նշանաւոր գործերէն մին կը սեպուի, ոչ միայն Թաթարներուն, այլ նոյն իսկ Վրաց Դաւիթ թագաւորին, Գէորգ Լաշայի որդւոյն ալ համակրութիւնը գրաւած ըլլալը, որով կրցաւ առնել ու ջնջել տալ այն նզովից անմատանգութիւնը, որ Գորգի թագաւորին օրով դրուած էր Վրացի Օրբելեանց ազգատոհմին վրայ* (§ 1021)։ *Գալով Տարսայիճի, շատ յաջող ու փառաւոր եղաւ անոր իշխանութիւնն ալ։* Այր քաջ և որդեայ և պատերազմող, և հաստատուն առաքինի, որ ամէն պատերազմներու մէջ անպարտելի յաղթութեամբ յաղթանէր, և ինն անգամ վերեալ անձամբ ջարդէր, *թէ հիւսիսային ապստամբներու, թէ Հոռոմոց Թուրքերու և թէ Ասորիքի Եգիպտացիներու դէմ յաղթական եղած էր՝ Թաթարաց հետ միասին պատերազմելով, որոնցմէ* ոսկի քամար *պարգեւին ալ արժանացած էր,* ըստ այն ժամ էր յաղթութեան պատիւն (ՕՐԲ. Բ. 170)։ *Ուրիշ տեղ ալ յիշեցինք թէ քամարը ասպարակաձեւ և շատ մեծ ոսկի մետալ մըն էր, թիղ մը տրամագիծով և լիտր մը կշռով* (§ 1148)։ *Տարսայիճի յաջողութեանց սաւերած բերող պարագայ մը եղաւ, որ* ած կենօք առաջին ամուսնոյն, *Խաչէնի նահատակ իշխանին Հասան-Ջալալի աղջիկը ու Աթաբէգ իշխանին քոյրը՝ Մինա խաթունը* առնոյր ի կնութեան, ընդ որ ոչ հաճեցան օրէնք և վարդապետք եկեղեցւոյ (ՕՐԲ. Բ. 170)։ *Օրբելեան այսչափով կը փակէ իր հօր կրկնամուսնութեան մեղադրանքը, առանց բացատրելու թէ ինչ պատճառանք յարմարցուց նա իր գործին, և թէ ինչ եղաւ Արուզ խաթունին վիճակը, ու երբ անոր վախճանը։ Ընդհակառակն երկարօրէն կը յիշատակէ Տարսայիճի ազդեցութիւնն ու բարութիւնը, որ* զգերութեան աշխարհիս Հայոց *ձեռք անցընելով,* բազում փրկութիւն և ազատութիւն առնէր նեղելոց ազգին Հայոց, 150 *և աւելի եկեղեցիներ ու վանքեր՝ տուրքերէ կ'ազատէր, և իբր* ազատած և գթած *այնչափ հռչակ հանած էր, որ Նախս գիւղի մէջ,* խաչ կանգնէին և անուամբ նորա կոչէին (ՕՐԲ. Բ. 173)։ *Երեւի թէ Արուզի մահուամբ ապօրինութիւնը դադրած և կրկնամուսնութիւնը չուսալ երկրորդ ամուսնութեան կերպարան առած է, որ ժողովրդական գայթակղութիւնը չէ զօրացած։*

**1160.** *Երբոր փոքրիշատէ հանդարտ էր Հայաստան, հանդարտութիւն չունէր Կիլիկիա, հարաւէն Եգիպտացիներէն և հիւսիսէն Սելճուքներէն յարձակումներ կրելով։*

**ԵԳԻՊՏԱՑԻՈՑ ԱՐՇԱՒԱՆՔԸ**

*Սիսի* 1266'*ի աւերումէն ետքը* (§ 1142), *հազիւ նորոգութիւններ կատարուած էին քաղաքին մէջ՝ և գրեթէ քաղաքն ու եկեղեցիներ իրենց առաջին պայծառութիւնը կը վերստանային, երբ* 9 *տարի ետքը* 1275'*ին՝ աւերածը նորոգուեցաւ։ Հայեգիպտական հաշտութիւնը, զոր կնքած էին Հեթում և Փնտուխտար* 1268'*ին* (§ 1154), *և որ բանադատեալ գործ մը եղած էր, իբր Լեւոնի ազատութեան միակ պայման, գրեթէ մեռեալ տառ մնացած էր, հակառակ շահերու բաղխումին առջեւ* (§ 1157)։ *Եգիպտացիք չէին կրնար զայն անտեսել, և հաշտ աչքով չէին տեսներ Հայե-*

*րուն՝ մէկ կողմէ Թաթարներուն և միւս կողմէ Լատիններուն մօտենալը, ուստի հաշտութիւնը եղծուած սեպելով, արշաւեցին արշաւել Կիլիկիա։ Վահրամ Եգիպտոսի սուլտանը կը մեղադրէ, թէ խոր երդմանն ոտնակոխեալ, և ուխտին այդ դարձեալ, այլ ինքնաբեր ապստամբեալ Կիլիկիոյ վրայ յարձակած ըլլայ, ինքն ալ անյամբն ընկեր զօրացն եղեալ* (ՎԱՀ. 231)։ *Իրօք ալ Փնտուխտար ինքն* 1275 *փետրուար* 1*'ին Եգիպտոսէ մեկնելով, մարտին մէջ Կիլիկիա հասաւ իր գունդերով* (ՍԻՍ. 555), *որոնք գիւղեր և քաղաքներ այրեցին, շատ մարդիկ կոտորեցին, Մամեստիայ մեծ կամուրջը կործանեցին* (ՍԱՄ. 152), *Տարսոնի տաճարը քանդեցին* (ՎԱՀ. 232), *և Սիս ալ մտան, եկեղեցի և ապարանք աւերեցին, և Լեւոն չկրցաւ անոնց դիմադրել։ Միայն Սիսի բերդը չգրաւուեցաւ, որուն պաշտպանութեան գլուխ կանգնած էր Երէց մը, դժբախտաբար անունը անյիշատակ մնացած, որ թշնամիներուն գլխաւորը, զի է ստրկանաց ստացեալ, և յարձակողներէն այլեւ դերձանգած փախչին ու հեռացան, թէպէտ յետ քաջարի երէցն ալ անդէն նահատակեցաւ* (ՀԱՅ. 481)։ *Եգիպտացիք աւելի արշաւանքի և ասպատակի ձեւով կը պատերազմէին, ուստի միւս տարւոյն* 1276*'ի սկիզբը նորէն Կիլիկիա եկան, բայց այս անգամ Լեւոն պատրաստ գտնուեցաւ դիմադրութեան, իւր հօրեղբօրն Սմբատ սպարապետի հրամանատարութեամբ, որ Սարուանդիքարի ճակատամարտին մէջ թշնամիները հալածելէն ետքը* (ՍԻՍ. 210), *դառնալու ատեն երէվերն հարեալ ընդ ընդ ծովոյ միջ չարաչար վիրաւորուեցաւ մահացու հարուածով, և հազիւ թէ Սիս հասաւ, ակնա ինչ ալեւեալ վախճանեցաւ մայիս* 6*'ին,* 70 *տարեկան հասակին մէջ, որ յոյժ ծերացեալ բռնելու չափ չէ* (ՀԱՅ. 481)։ *Միեւնոյն միջոցին Թաթարներ վերջին հարուածը կուտային Սելճուք Թուրքերուն՝ Ռումի կամ Հոռոմ ըսուած սուլտանութեան, և պաշտպան կը կանգնէին Հայերուն, մինչեւ իսկ Թուրքերուն գաւառները անոնց յանձնելու չափ, եթէ Լեւոն իմաստուն և խոհական մտածմունքով հրաժարած չըլլար ընդունելէ, Ապազայէ խնդրելով միայն զան աղօթաւորեան սուրբ երկրէն ուխտաւորի* (ՀԵԹ. 54)։ *Ասով Եգիպտացւոց ոխն ալ կատրած պիտի ըլլար և Լեւոն ալ ապահովութիւն պիտի ստանար։ Վահրամ կը գրէ, թէ սուլտանն զայս լուեալ՝ որ յԵգիպտոս լինէր մերձեալ, յորժամ Լեւոն զօրքն յղեալ, երդուաւ և ետ ընդ նա երթեալ* (ՎԱՀ. 234)։ *Սակայն Թաթարաց բարեկամութիւնը արգելք եղած պիտի ըլլայ անմիջապէս Եգիպտացւոց հետ հաշտութիւն կնքելու, զի Լեւոն* 1277*'ին Թաթարաց հետ կը գտնուի Բերիոյ պատերազմին մէջ.* 1279*'ին Եգիպտացւոց դէմ կը պաշտպանէ Հռոմկլայի բերդը,* 1280*'ին Թաթարներու օգնութեամբ յաղթութիւն կը տանի Հոմսի կամ Եմեսիոյ ճակատամարտին մէջ, բայց Եգիպտացիներ կրկին կը զօրանան* (ՀԵԹ. 55) *և վերջապէս հայեգիպտական դաշնագրութիւն մը կը հաստատուի* 1282*'ին* (ՍԻՍ. 556)։

**1161.** *Յակոբ կաթողիկոսի հայրապետական գործունէութեանց մանրամասնութիւնները կը պակսին պատմութեանց մէջ, թէ վերեւ յիշուած միջոցին համար՝ Լուգդունի ժողովէն մինչեւ հայեգիպտական դաշնագրութիւնը, և թէ անկէ մինչեւ իր մահը, ընդամէնն* 13 *տարիներու միջոցին։*

**ՅԱԿՈԲԻ ԸՆԹԱՑՔԸ**

*Գիտնալով Յակոբի վարչական և ուսումնական կարողութիւնները, չենք կրնար այդ դատարկութիւնը կամ սկարութեան կամ անփութութեան վերագրել, և եթէ պարզապէս պատմութեանց պակասութեան արդիւնք չէ, ստուգիւ խոհական ընթացքի մը հետեւանք է, որ չփոթ և փափուկ պարագաներու ներքեւ, սիրած է խնդիրներ չգրգռել և տարադէպ գործերու առիթ չտալ։ Քաղաքականապէս անկայուն և անորոշ կացութեան նկարագիրը գծեցինք* (§ 1167), *եկեղեցականապէս ալ ոչ նուազ փափուկ էր պարագայն։ Եգիպտական բարեկամութեանց վախնալով և լատինական բարեկամութեանց կասկածելով, երկուքին մէջ տարուբերեալ կը մնայր Կիլիկեան թագաւորութիւնը, այնպէս որ եթէ բացարձակապէս Լատիններուն կրթնէր կրօնական և եկեղեցական ծանր պայմաններու ներքեւ պիտի իյնար, ինչպէս քիչ ետքը հշմարտուեցաւ Հեթում Բ'ի օրով։ Իսկ եթէ բացարձակապէս Եգիպտացիներուն կրթնէր, կը վախնար դարձեալ նենգութեան զոհ երթալ. ուստի միջանկեալ քաղաքականու-*

թեամբ, երկու կողմերն ալ գործածելով պիտի կարենար Կիլիկեան Հայութիւնը իւր ազատութիւնը երաշխաւորել։ Լեւոն այդ ճամբուն հետեւեցաւ, Յակոբ ալ զայն այդ ճանբուն մէջ քաջալերեց, և չուզեց ծանր խնդիրներ յուզել, և եկեղեցական խնդիրներ ստեղծել, և լաւ սեպեց աւելորդ վիճաբանութիւններէ խորշիլ, և բանադատելով զիջողութեանց ասիթ չտալ։ Յակոբի և Լեւոնի գործակցութեան միջոցը Հայ եկեղեցւոյ ինքնութիւնն և ուղղութիւնը անփոփոխ և հաստատուն պահելու շրջան մը եղաւ։ Հեթում Առաջինի և Կոստանդին Առաջինի շրջանին վրայ, պահպանողական յաւթեան առաւելութիւն մը կը գտնենք, որ իրօք վերջին մասն է Կիլիկիոյ պահպանողական շրջանին, վասն զի քիչ ետքը սկսաւ Հեթում Երկրորդի և Անաւարզեցիի թոյլ ու զիջողամիտ շրջանը, որ եթէ Հայ եկեղեցւոյ կերպարանը խեղապէս և տխրապէս չկրցաւ այլայլել, սակայն նախ լատինասէր, և ետքէն լատինազգի թագաւորներու օրով, լատինամիտ հայրապետներու գործունէութեան ալ ասպարէզ բացաւ։ Այդ դիտողութիւններու հիմնուելով է, որ իրական եղելութեանց փաստերով իրարու հակառակ չենք գտներ Յակոբ կաթողիկոսին՝ մէկ կողմէն առաւել կարողութեան և միւս կողմէն նուազ գործունէութեան եղերը։ Մեր այս տեսութեան իբր հաստատութիւն կը նկատենք նաեւ Անտիոքի յոյն պատրիարք Եւթիմէոսին դիմագրելը, որ Լատին պատրիարքներուն յարուցած պահանջին հետեւելով (§ 1110), Հայոց կաթողիկոսին վրայ գերիշխանութիւն ունենալ կը ձգտէր, և յանդուգն ձեռնարկներու յաւակնելուն պատճառաւ՝ Լեւոնի ձեռքով կ՚աքսորուէր ալ (ՉԱՄ. Գ. 270)։ Պէտք է յիշել, որ Անտիոքի Լատիններու մտնելէն ետքը՝ յոյն պատրիարքներ երբեմն Կոստանդնուպոլիս (§ 1000), բայց աւելի Տարսոն կամ Կիլիկիոյ ուրիշ մէկ քաղաքի մէջ կը մնային։

**1162.** Պատմական յիշատակութեանց պակասութեան մէկ պատճառ ալ մարթ է համարիլ խաղաղութեան սեւողութիւնը, որ 1282՚ի հայեգիպտական դաշնագրութեան հետեւանքն եղաւ, և շարունակեց մինչեւ Լեւոն Գ՚ի մահուան թուականը, ինչ որ նոյն թագաւորին ճարտար քաղաքականութեան արդիւնք պէտք է սեպուի։ Լեւոն

ԼԵՒՈՆ ՈՒ ՏԱԹԵՒ

Եգիպտացւոց հետ խաղաղութիւնը հաստատելէն ետքը, սկսաւ իւր մասնաւոր դրութիւնը զարձնել Հայաստանի կողմը, և այնտեղի հետ յարաբերութեանց ասիթներ ստեղծել, հարկաւ միեւնոյն դիտումներով, զորս իւր մեծ հայրն Լեւոն Բ ալ ունեցած էր, Կիլիկեան թագաւորութիւնը Հայաստանի վրայ ալ տարածել։ Առ այս բարեդէպ պատեհ սեպեց Տաթեւի արքեպիսկոպոս Հայրապետին իրեն այցելութեան գալը, երբ ծերութեան տարիքին մէջ Երուսաղէմի ուխտագնացութենէն կը դառնար։ Լեւոնի կողմէն Տաթեւի սրբավայրին սահմանուած ընծաներ եղան, զինքը ընդանոյն յարգանական մատուցից, գործ Ցանոց ճարտարաց աննման կերտուածոյ, խաչ զարդական է ոսկեզօծեալ և ադամանդազարդ կերպուցեալ և զնդեալ յանկամ, այսինքն է խաչ ոսկեգործ և ադամանդազարդ, «կերպ զարդական է ըստ արծաթոյ, և այլ բազում ընծաներ»։ Յիշատակարանը 1282 թուական կը կրէ, զոր ետեալ ձեռամբ գրած է Լեւոն (ՕՐԲ. Բ. 181), և Օրբելեան զայն ամբողջապէս յառաջ կը բերէ, և կը յաւելու թէ զանկի օրուան պատարագները կարգեցան յիշատակ նմա (ՕՐԲ. Բ. 183)։ Այդ ընծայաբերութեան բոլոր պարագաները՝ բնիկ Հայոց թագաւորի մը յիշատակը կը նորոգեն Տաթեւի մէջ, և այս միտք կը յորդորէ Լեւոնի գործին մէջ բարեպաշտութեան հետ, քաղաքական հեռաւոր տեսակէտ մըն ալ նկատել։ Արտաքին պարագաներն ալ կրնային Լեւոնի այդ հեռապատկերը քաջալերել։ Նոյն միջոցին էր որ Ապաղա խան, և եղբայրը Մանգոտան զօրավար՝ թունաւորուելով մեռած էին, և իշխանութեան բարձրացած էր Տանգոտար եղբայրնին, յաւուր մանկութեան մկրտուած Նիկողայոս անունով, բայց վերջէն իսլամութիւնը ընդունած Մակարէ կոչմամբ (ՀԵԹ. 56)։ Թէպէտ աւելի ծանօթ է Ահմէտ անունովը (ՕՐԲ. Բ. 172. ՀԵԹ. 84)։ Ահմէտ մոլեռանդ նախանձայոյզ մը յայտնուեցաւ իւր նոր կրօնքին մէջ, և նոյն իսկ Եգիպտացիներու հետ հաստատեաց դաշն և ուխտ խաղաղութեան, և ձեռնարկեց զանձնոյն երկրորդեայ պերոս-

…եան իւրոյ սփռել ի սողոմականութեան, որ է խայտառակութիւն, և մինչև իսկ համարձակեցաւ նոյնը առաջարկել Հայոց ու Վրաց թագաւորներուն (ՀՑԹ. 57)։ Բայց ներքին խռովութիւններ ծագեցան Թաթարներու արևմըտեան պետութեան մէջ։ Արղուն՝ Անմէտի եղբօրորդին, անոր դէմ ելաւ, և թէպէտ անգամ մը յաղթուեցաւ ու գերի ինկաւ, բայց հնարքով ազատեցաւ, և նորէն զօրացաւ ու Անմէտը մէջտեղէ սպաննեց, և ինքը տիրացաւ իշխանութեան 1284'ին (ՀՑԹ. 58)։ Հայաստանի գաւառները յուզուեցան այդ ներքին շփոթութիւններէն, և Լևոն կրնար իրաւամբ հեռուէն դիտել Թաթարներու իշխանութեան տկարանալը, և իր թագաւորութեան յաջողութիւն մը սպասել այդ երևոյթէն։ Սոյն նպատակով էր անշուշտ, որ ինքն ալ նոյն տարին Եգիպտացւոց հետ խաղաղութեան դաշինքը կը նորոգէր (ՍԻՍ. 384)։ Սակայն իրական օգուտը քաղեց Դեմետրէ Վրաց թագաւորը, զոր սիրէր Արղունն, և ետ նմա զամենայն աշխարհն Հայոց, և Դեմետրէ ալ Տարսայիճ Օրբէլեանը պատուեց, և ետ աթաբեգ ի վերայ ամենայն պետութեան իւրոյ մինչև ի Տփղիս և յԱնի և ի Կարս (ՕՐԲ. Բ. 173), ինչպէս անգամ մը յիշեցինք (§ 1159)։

**1163**. Յակոբ արդէն կաթողիկոսութենէ առաջ գործունեայ դեր ունեցած էր, և հարկաւ երիտասարդ մը չէր՝ երբոր կաթողիկոսութեան բարձրացաւ, և 20 տարիէ աւելի հայրապետական աթոռին վրայ կը պաշտօնավարէր։ Հետևաբար ծերացեալ տարիք ունէր, և աշխատութենէ ալ յոգնած, և յուզմունքներով ալ մաշած պիտի ըլլար, նեղեալ ծերութեամբ պառաւեալ կոչուելու չափ (ՀԱՅ 496), որով հասունցեալ մահ մը եղաւ իր վախճանը։ Մահուանը մասին ոչ մի մանրամասնութիւն չունինք, բայց Հռոմկլայի մէջ հանգչած պիտի ըսենք, և հաւանաբար նոյն տեղ ալ թաղուած։ Հայրապետանիստ դղեակին 1279'ին պաշարումը (§ 1160), հարկաւ յուզեց ու նեղեց ծերունի կաթողիկոսը, սակայն թողած ու հեռացած ըլլալը գրուած չէ, և ենթադրելու հարկ չենք տեսներ։ Մահուան թուականը 1286 գրուած է Սըմբատի շարունակողէն (ՍՄԲ. 125), և Օրբէլեան ալ 1280'էն հաշուելով յետ հնգ ամի կը դնէ, իր Սիւնիքէն մեկնիլը (ՕՐԲ. Բ. 174), որով 1286'ին սկիզբը կը ճշմարտուի Յակոբի մահը, որուն ճիշդ օրն ալ փետրուար 12 նշանակուած է (ՀԱՅ 492)։ Ուրիշներ 1287 [illegible] [illegible] գրած են մահը (ՁԱՄ. Դ. 283), բայց ոչ իրենց աղբիւրն է յայտնի, և ոչ առաջին վկայութիւնները ջնջելու ոյժ ունի։ Իսկ 1286 փետրուար 12 օրը, Առաջաւորի երկրորդ երեքշաբթին, Սուքիասանց տօնին կը հանդիպի, և ոչ աղուհացից մէջ։ Յակոբի անձին և կարողութեան (§ 1153) և ուղղութեան վրայ (§ 1161) բաւական խօսեցանք, հետևաբար պէտք չենք տեսներ անդրադառնալ, և իրեն վրայ մեր տեսութիւնները ամփոփել։ Իբր գրական արգիւնք ալ, թէպէտ զանազան լուծմունքներ գրած ըլլալը յիշուած է (§ 1153), սակայն մեր ձեռքը իր գրական արժանիքին իբր նմոյշ միայն Երգեցէք շարականը հասած է, Աստուածածնայ ծննդեան ամբողջ կանոնը (ՇԱՐ. 5—10)։ Յակոբի ժամանակը հայ գրականութեան համար նշանաւոր շրջան մը եղած է, թէ գիրքերու բազմանալովը և ընտիր գրչագրութեան օրինակներ արտադրելովը, և թէ նոյն ժամանակին ծաղկած վարդապետներու և մատենագիրներու ընտիր խումբովը։

**1164**. Յակոբի մահը տարաժամ պատահար մը կը լինէր Ստեփաննոս Օրբէլեանի, որ արքեպիսկոպոս ձեռնադրուելու համար Սիւնիքէն Կիլիկիա եկած ատեն, երբոր Սիս կը հասնէր, կաթողիկոսին վախճանած ըլլալը կը լսէր, և նոր ընտրութեան սպասելու կը պարտաւորուէր (ՕՐԲ. Բ. 227)։ Ստեփաննոսի անունը տուած ենք արդէն, իբր Տարսայիճ Օրբէլեանի որդի, և Սմբատ Օրբէլեանի որդեգիր (§ 1159), որ յորդորեաց մօր զինքն ուխտել և ընծայել ի տուն Տեառն կ'անուանէ, շատ պզտիկութենէ եկեղեցական ուսմանց և կոչման նուիրած ըլլալով Հայրապետ արքեպիսկոպոսի խնամոց ներքև։ Հետզհետէ յառաջացած էր եկեղեցական աստիճաններու մէջ, և [illegible] և [illegible] ըլլալէ ետք, կոչուած էր ի [illegible] և ի

ՅԱԿՈԲԻ ՄԱՀԸ

ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԷԼԵԱՆ

սարկաւագութեան, և վերջապէս քահանայացած (ՕՐԲ. Բ. 226), ինչ որ կատարուած է 1280ին, ի ձեռաց տեառն Ներսէսի, և աշխարհախումբ հանդիսիւ (ՕՐԲ. Բ. 174)։ Յիշուած աստիճաններն կը հաստատեն թէ ամբողջ հինգ աստիճաններու գրութիւնը պահուած էր Հայոց եկեղեցւոյն մէջ, և մանաւանդ Հայաստանի բնիկ վիճակներու մէջ, թէպէտ և եօթնի բարձրացումը հարիւր տարի առաջ մուտ գտած ըլլալուն յիշատակութիւնը ըրինք (§ 1020)։ Պատմութիւնը այդ մասին որոշ ծղելութիւններ հասուցած չըլլալուն, կը յորդորուինք ըսել, թէ փոփոխութիւնը վճռական կերպով չհրամայուեցաւ, այլ նախապէս Կիլիկիոյ մէջ հետզհետէ տարածուեցաւ, և շատ ուշ Հայաստանի մէջ ալ գործածուիլ սկսաւ։ Դիտելու արժանի կը սեպենք նաև եկեղեցական կոչման տրուած յարգանքը, որով իշխանական տուներ պատիւ կը սեպէին իրենց մէջէն եկեղեցական մըն ալ ունենալ, և անով եկեղեցական պաշտօններն ալ իրենց ազգատոհմին սեփականել։ Այդ սովորութիւնը միջին դարու մէջ ընդհանրացած էր Եւրոպիոյ ազնուական ցեղերուն մէջ, որոնց զաւակներէն առաջինը ազգատոհմին տանուտէրութեան, երկրորդը եկեղեցական կոչման, և երրորդը զինուորական ծառայութեան կը սահմանուէին սովորաբար։ Սմբատի վրայ դառնալով խօսքերնիս, աւելցնենք թէ կուսակրօն քահանայութենէ ետքը շարունակած է վարժիլ ի կղերական առաջնորդեցելն տանէց, որ է Տաթեւու վարդապետանոցը, ուսկից ետքը, կը գրէ, ետ հրաման և նորայ յաթոռ վարդապետական, այսինքն է գաւազանի իշխանութիւն տուած է յաստուածազարդեաց և յաշխարհահռչակ րաբունապետէն Ներսիսէ (ՕՐԲ. Բ. 226), որ է Գլաձորեցի Ներսէս վարդապետ (ՀԱՑ. 492)։

**1165**. Սմբատ իշխան իր եղբօրորդին եկեղեցականութեան նուիրած, և անոր

ՍԻՒՆԵԱՑ ԱԹՈՌՆԵՐ

գատախազութիւնը հոգացած ատեն, հարկաւ զայն աթոռին աստիճանի մէջ թողլու նպատակ չունէր, և Տարսայիճ ալ իր որդւոյն համար աւելի դիրք չէր կրնար ունենալ։ Քահանայական ձեռնադրութենէն 5 տարի ետքը. այսինքն 1285ին, որոշեց յղել զայն Կիլիկիա, առ մեծ կաթողիկոսն տէր Յակոբ ի ձեռնադրութեան եպիսկոպոսութեան (ՕՐԲ. Բ. 174) Այստեղ յայտնի բսուած չէ. թէ Տաթեւի արքեպիսկոպոսական աթոռին պարապութեան ատեն՝ յաջորդութեան համար էր ձեռնադրութիւնը, ինչպէս ոմանք կը մեկնեն (ՋԱՄ. Գ. 283), թէ ոչ պարզապէս եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստացած ըլլալու նպատակով էր, ապագային աթոռի տէր ըլլալու համար։ Օրբելեան ուրիշ տեղ կը գրէ, թէ ժողովեալ մերոց եպիսկոպոսաց առ հայրն էի, հրամայեցին ինձ առնուլ ձեռնադրութիւն մետրապոլտութեան ի վերայ աթոռոյս Սիւնեաց (ՕՐԲ. Բ. 227), որ դասակարգելով աթոռին յաջորդութիւն մեկնուած է. սակայն նոյն ինքն կը պատմէ, թէ իր ձեռնադրութենէ զատնայէն ետքը խնդրեցեալ եպիսկոպոսացն որ է Տաթեւ, յաւել վերջու հասոյցն եկեղեցւոյ, և թէ մինչ ի վախճան կարեաց երկոցունց, տէր Հայրապետին և տէր Յովհաննէսին, ոչ դադարեաց խաղաղ և խաղաղութեան (ՕՐԲ. Բ. 175)։ Իսկ այս երկուքը Տաթեւի աթոռին եպիսկոպոսքն են (ՕՐԲ. Բ. 248), որք կենդանի կ'ենթադրուին իր ձեռնադրութենէ ետքն ալ։ Մենք դիտելով որ մէկ կողմէն՝ յանուանէ զՍտեփանոս մետրապոլիտ մեծ աթոռոյն Սիւնեաց (ՕՐԲ. Բ. 174) և միւս կողմէն նախորդ մետրապոլիտներ Հայրապետ և Յովհաննէս, կենդանի կը ցուցուին Ստեփանոսի ձեռնադրութենէն ետքն ալ (ՕՐԲ. Բ. 175), պիտի եզրակացնենք, թէ Տարսայիճ իշխան յաջողած էր իր որդւոյն ձեռնադրութիւնը ընդունելի ընել ատոր եպիսկոպոսներուն, ոչ թէ իբր դատարկացեալ աթոռի մը յաջորդ, այլ Սիւնեաց բաժանեալ աթոռներուն վրայ գերագոյն գլուխ մը, ինչպէս որ իր կարգին ընդարձակօրէն պիտի բացատրենք։ Իսկ Հայրապետի և Յովհաննէսի՝ մէջէն բուն եպիսկոպոսը ով էր, երկար քննութեան պէտք չենք տեսներ, վասնզի ցուցակին մէջ Սողոմոն մըն ալ կը յիշուի, որ պատմութեան մէջ չյիշուիր, իբրև է մեծին (ՕՐԲ. Բ. 248) պաշտօն վարող, և կ'երեւի թէ Հայրապետի ծերական ալեօք ակարացած ըլլալուն (ՕՐԲ. Բ. 181), և ախտագնացութեանց պատերուն պատճառաւ (§ 1162), ատեն մը Սողոմոն անոր աթոռակից եղած է, և վերջէն ալ Յովհաննէս։

Ստեփանոս՝ մեռած գտաւ կաթողիկոսը, և պարտք սեպեց թագաւորը տեսնել. և Աստանա քաղաքը երթալով անկէց մեծ պատիւ գտաւ է վեր տան ղուբճանն, և ամեն երեք թագաւորին մօտ մնաց (ՕՐԲ. Բ. 228), զոր պէտք չէ իբր ստուգութեան չափ առնել, այլ միայն 3 ամիսներէ մասեր, զի Յակոբ փետր. 12'ին վախճանած ըլլալով, Ստեփանոս ապրիլ 14'ին ձեռնադրուեցաւ, ճիշդ 60 օր ետքը:

**1166**. Յակոբի օրով ծաղկած մատենագիրներուն սկիզբը կը սիրենք յիշել Սմբատ Գունդստապլը, իբր զի Գրիգոր Մագիստրոսէ (§ 866) և Մխիթար Հերացիէ ետքը (§ 1027), երրորդ աշխարհական հեղինակի անունն է, զոր կ'արձանագրենք:

ՍՄԲԱՏ ԵՒ ՎԱՀՐԱՄ

Սմբատի գործունէութեան յիշատակները պատմութեանս կարգին յիշեցինք մինչև իւր մահը (§ 1160): Աւելի խօսուած երկասիրութիւնն է պատմութիւնը կամ Տարեգիրքը, ուսկից շարունակ օգտուեցանք: Անկէ զատ ունի Ասիզք Անտիոքայ, և Ծաղկաքաղ Օրինագիրք գործերը, որոնք կը ցուցնեն, թէ ոչ միայն զէնքով ծառայեց իւր ազգին իբր սպարապետ, այլ և գրիչով, իբր օրէնսգէտ և փորձագէտ: Օրինագիրքը կազմած է 1265'ին Գօշի դատաստանագիրքը և Լամբրոնացիի բիւզանդական օրինագիրքը կարգաւորելով և համառօտելով: Անոնցմէ զատ կը գտնուին նաև Սմբատէ մնացած թուղթեր ու յիշատակարաններ (ՀԻՆ. 774): Սմբատի ոճը աւելի ռամկականի մօտ է, իւր միտքն ըլլալով հասարակ ժողովուրդին օգտակար ըլլալ: Եկեղեցական դասակարգէն յիշատակելու արժանի է, Վահրամ Րաբունի, որ Լևոն Բ'ի ատենադպիրն էր, և անոր խնդրանօք գրած է Ներսէս Շնորհալիի ոտանաւոր պատմագրութեան շարունակութիւնը (§ 962), և 770 տողերով հասուցած է մինչև Լևոնի վերջին պատերազմները (§ 1160), միշտ ոտանաւորելով անոր գովեստները: Պատմութենէն զատ զանազան ճառեր ալ կը վերագրուին նոյն Վահրամ վարդապետի (ՀԻՆ. 792), որ իւր ինքնութեան վրայ ուրիշ տեղեկութիւն տուած չէ, և միայն Րաբունի մականունովը կը յիշուի:

**1167**. Կիրակոս վարդապետ Արևելցի, Գանձակեցիէն տարբեր (§ 1146), թէպէտ ևս ալ Գանձակեցի կը կարծուի, որուն գլխաւոր գործն եղած է Յայսմաւուրքի կարգադրութիւնը

ՈՒՐԻՇ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ

1269'ին, 170 նոր կտորներ աւելցնելով (ՀԻՆ. 754): Ճառընտիրին կարգադրութեան ալ աշխատած է, իրմէ աւելցնելով Աբէ-Եւ ֆէռ-ըֆֆէն (ՇԱՐ. 741—747) Աստուածածնայ շարականը, որ բարձր գաղափար մը չներշնչեր հեղինակին վրայ: Կիրակոսի մահը տեղի ունեցած է 1272 յունուարին (ՄԽՍ. 555) Կիլիկիոյ մէջ, ուր անցուցած էր իւր կեանքը: Ներսէս վարդապետ Մշեցի, բնիկ Մուշ աւանէն, Առաքելոց վանքին աշակերտ էր և վերջէն առաջնորդը եղաւ: Թէպէտ ուսմամբ և հմտութեամբ նշանաւոր էր, բայց վերջին տարիներ ուզած է Վարդան Արևելցիին մօտ երթալ (§ 1099), աւելի զարգանալու դիտմամբ, և այն տեղ վախճանած է 1284'ին, բայց իրմէ գործ մը չէ հասած մեզի: Ներսէսի աշակերտն է Յովհաննէս վարդապետ Արճիշեցի, Ոսպնակեր մականուանեալ, 17 տարի շարունակ միայն ոսպով սնանելուն համար: Իրմէ մնացած է պատարագի մեկնութիւն մը Անձևացիէ և Լամբրոնացիէ քաղուածներով: Մխիթար վարդապետ Սասունցին ալ Ներսէս Մշեցիի աշակերտ կը սեպուի, թէպէտ Ներսէս Գլաձորեցիին ալ հետևեցաւ երկար ժամանակ: Իւր արդիւնաւորութեան գլխաւորն եղած է շրջուն քարոզչութիւնը Հայաստանի գաւառներու մէջ, և նեղելոց օգնութիւն հասցնելը, և երկարակեաց ալ եղաւ մինչև 1337 ապրելով, որ տարին վախճանած է փետրուար 11'ին Մեծոփայ վանքը: Յովհաննէս վարդապետ Գանձակեցի հեղինակ ատենապատճառ հաւաքածոյի մը, զոր կազմած է առաջին վարդապետներէն քաղուած հատուածներով, և իրմէ ալ կտորներ աւելցնելով (ՁԱՄ. Գ. 275): Զաքարիա Ծործորեցի, Արտազու արքեպիսկոպոսն ալ, որ Յովսէփ Արտազեցիի յաջորդած էր (§ 1126), արդիւնաւոր եղաւ իւր աթոռը պայծառացնելով, և ուսումնական վարդապետներուն գլխաւորապէս Յովհաննէս Երզնկացիի ասպնջական և պաշտպան կանգնելով: Այս

առիթէն է Երզնկացիին երևնալ Մարծարեցի կոչուիլը (ՁԱՄ. Գ. 274), բայց անոր վրայ խօսիլը աւելի վերջը կը թողունք։ Իսկ Զաքարիայի անունը չատ կանուխէն տուած ենք Արտաղեան յիշատակարանի վրայ խօսած առենները (§ 20)։ Պէտք էր այստեղ Հայոց մէջ մուտ գտնող լատին վանականութեան վրայ ալ խօսիլ, բայց այն ալ կը յետաձգենք, ամփոփ անդէկութիւններ տալու համար իւր կարգին։

# Տ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Բ. ԿԱՏՈՒԿԵՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ**

**1168.** *Յակոբի յաջորդութեան խնդիրը, անհամաձայնութեանց առիթ տուած պէտք է ըսենք, նկատելով որ Նոր կաթողիկոսը ուխտարհաքամար ծուխով ընտրեցին յառաջս փառաւորն (ՕՐԲ. Բ. 228)։ Այլևս գադրած էր առհմային յաջորդութեան դրութիւնը, և արժանաւորագոյնին ու յարմարագոյնին նախէ եղած առենները, հակառակ կարծիքներու բախումը անհրաժեշտ էր, ինչպէս որ այս անգամ ալ հանդիպած է։ Եթէ ընտրելիներուն առաջինը, նոյն ինքն ընտրուած Կոստանդինն էր, ուրիչ նշանաւոր ընտրելի մըն էր Գրիգոր Անաւարզայ եպիսկոպոսը, այն որ վերջէն կաթողիկոս եղաւ, և հաչակաւոր հանդիսացաւ իւր լատինամոլութեամբ։ Այդ պարագայն բաւական է մեզի ցուցնելու, թէ ընտրողական պայքարին հիմը կը կազմէր լատինական յարաբերութեանց կէտը, մաս մը համակիրներ և մաս մըն ալ հակակիրներ գտնուելով ընտրողական ժողովին մէջ։ Եւ որովհետև չատ յայտնի է Անաւարզեցիին ուղղութիւնը իբր կատարեալ լատինամոլ, դիւրին կ'ըլլայ հետևցնել թէ Կոստանդին հակառակ ուղղութեան ընտրելին էր։ Լևոն թագաւոր հաչտարար ընթացք մը կը բռնէր միչտ, լատինամոլ չէր, բայց հակառակիլ ալ չէր ուզեր, ուստի պատչաճ կերպերով կը ջանար Լատինաց հանդէպ գիջողական պարագաները հեռացնել։ Ըստ այսմ բոլորովին անհիմն է սմանց կարծիքը իբր թէ Լևոն Անաւարզեցիին պաչտպան եղած ըլլայ (ՁԱՄ. Գ. 283)։ Օրբելեան կը գրէ, թէ այն միջոցին որ ինքն Կիլիկիա կը գտնուէր և ընտրողական վէճը կը յուզուէր, վանականք կոչման Կարմիր-Լեռին ըսկսան խէտ ու խէտ տարակուսեցին Անաւարզեցիին լատինամոլութիւնը մէջտեղ դնելով, և թէ յայտնել բազմացելոց փառս առեալ ապաստանդառակ իքառարին և բնաւին ծաղւելն, ու ծծին Անաւարզեցին (ՕՐԲ. Բ. 199)։ Այդ խօսքերը յայտնապէս կը վկայեն թէ Լևոն երբեք պաչտպանած չէ Անաւարզեցիին ընտրելութիւնը, այլ մանաւանդ անոր դէմ եղած է։ Լևոնի հնարագիտութեան արդիւնքը եղած պիտի սեպենք, երկու ընդդիմամարտ ընտրելիներն ալ մէկ կողմ դնելով՝ երրորդ մը առաջ անցընել, իսկ այս նպատակին յարմար տեսած էր առաջարկել բոլորովին օտար մը, հեռու եկած և Կիլիկիոյ խնդիրներուն մէջ մաս չունեցող, Սիւնեաց ընտրեալ մետրապոլիտը, և այդ միտքով յուղով Բախանյանս ասէր նմա Թուղ անդէն, և նովիլ յաթոռ կաթողիկոսութեան Հայոց։ Բայց Օրբելեան Սմբատա ոչ առնոյր յանձն (ՕՐԲ. Բ. 174). գուցէ և լատինասէրներն ալ աւելի կը զգուչանային Արևելեաններէն կաթողիկոս մը ունենալ, և այսպէս որպէս մեծ աշխարհաժողով, և բազում ընտրութեամբ, որ քուէից մեծամասնութեան իմաստն ունի, կոչեցանէն կաթողիկոս Հայոց տեր Կոստանդին (ՕՐԲ. Բ. 174)։ Բոլոր մեծպահքը վէճերու մէջ անցուցած ըլլալով, վերջապէս Կոստանդինը օծեցին Սիսի մէջ, յաւուր եկեղեցին Սուրբ Սոֆի (ՕՐԲ. Բ. 184), ի մեծի ճրագալուցի տօնին, որ կը հանդիպէր 1286 ապրիլ 13'ին, և ի վաղուեան աւուրն, զատկի օրը՝ ապրիլ 14'ին, Սմբատա Օրբելեանը յենակալեցին և պսակեցին զնա սուրբ և առաքելական եկեղեցւոյն Սէնեաց (ՕՐԲ. Բ. 228), և երկու նչանաւոր հանդէսներ միացուցին զատկական հրաչափառ ամախմբութեանց։*

**1169.** *Կոստանդին Բ ընտրութենէն առաջ յիչուած և գործի վրայ գտնուած չէր,*

**ԿԵՍԱՐԱՑԻԷՆ ՏԱՐԲԵՐ Է**

և Օրբելեան նորա անձնաւորութիւնը ճըշ-դելու համար կը դրէ, թէ էր առաջնորդ սուրբ և ջերմեռանդ վանա-տանէն Խորին Կուսեցւոյ (ՕՐԲ. Բ. 184), որ էր Մեծ է անձնան Բարձրբերդոյ և Լեռանկլային՝ ամրոցին դղեկոյն, և նշանաւոր առաջնորդներ ալ ունեցած էր (ՍԻՍ. 151)։ Կոստանդին իր ծագմամբը կը կոչուի Կա-տուկեցի (ՍԱՄ. 152), թէպէտև Կիլիկիոյ Կատուկ անունը (ՁԱՄ. Գ. 284) Սիսուանի տե-ղագիրը չյիշեր, անոր դիրքը գտած չըլլա-լուն, և ոչ իսկ կը հաւանի նոյնացնել Կա-տէնի հետ, որ Խորին վանքին մօտ և Բար-ձրբերդի շրջանակին մէջ կը գտնուէր (ՍԻՍ. 147)։ Կոստանդինի կանուխէն առանձնացած վիճակը և Կատուկի անծանօթ դիրքը պատ-ճառ եղան անշուշտ, որ Անեցիին շարունա-կողը «և տէ Կեսարացի» յաւելուածը դրու Կատուկեցի կոչումին մօտ (ՍԱՄ. 152), և պատճառ եղաւ անուններու և անձերու շփո-թութեան։ Անոր հետեւողութեամբ յետա-գաներն ալ ընդունեցան, թէ Կոստանդին Կեսարացին, միեւնոյն Կոստանդին Կատու-կեցին է, որ 3 տարիէ գահազուրկ ըլլալով, իբր թէ 18 տարի ետքը նորէն աթոռ դար-ձած և 15 տարի եւս կաթողիկոսութիւն վարած ըլլայ։ Այդ շփոթութիւնը բոլոր նոր պատմագիրներէն ընդունուած ու կրկնուած է, բայց մեր յատուկ հետազօտութիւնք ա-ռաջնորդեցին մեզ Կատուկեցին Կեսարացիէն զատել, և Կոստանդին Բ և Կոստանդին Գ անունով տարբեր կաթողիկոսներ ընդունիլ հայրապետական աթոռին վրայ, ինչպէս ար-դէն ցուցած ենք մեր կազմած ցուցակնե-րուն և պատմական յիշատակներուն մէջ (09 ՕՐԱ. 277. և 09. ԼԱԻ. ՆՈՅ. 46), և այդ մասին հակառակ կարծիքի մը չենք հանդիպած, որ մեր տեսութիւնը հերքած և փաստերը ցրած ըլլայ։ Կրնար մտածուիլ, թէ մի՛ գուցէ Կա-տուկեցին՝ Կապադովկեցի իմացուած և Կե-սարացիի փոխուած ըլլայ. սակայն անհիմն ենթադրութենէ աւելի չէր ըլլար։ Իսկ Կա-տուկեցիին Կեսարացիէն տարբեր ըլլալը հետ-զհետէ պիտի ցուցնենք, պատմական պա-րագաները բաղդատած ատեններս։ Կոստան-դին Կատուկեցի՝ Պռօնագործ (ՍՄԲ. 125) կամ Պրօնգործ (ՍԱՄ. 152) մականունով ալ կը յիշուի, որ կը նշանակէ պրօն կամ այծի բուրդ գործող արհեստաւոր մը, ինչ որ կըր-նայ՝ կամ Կոստանդինի հօրը արհեստը եղած ըլլալ, կամ թէ նոյն իսկ Կոստանդինի վա-նական առանձնութեան մէջ՝ ձեռագործ զբա-ղումը ենթադրուիլ։ Պատմութիւնը մակա-նունին ծագումը չտար։

**ԿՈՍՏԱՆԴԻՆԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

**1170.** Ընտրողական պայքարին հոգին բաւական է ցուցնել, թէ Կատուկեցին եր-բեք լատինամոլ մը եղած չէր կրնար ըլլալ. եթէ Անաւարզեցիին ընդդի-մադիր ընտրելի մըն էր։ Հետեւաբար մտացածին և անհիմն է Անեցիի շարունակողին մեղադրանքը, թէ «ու Եղծ-առաջին Աղթամարայ է Սիս» (ՍԱՄ. 152)։ Այդ ա-նունով կ'իմացուի ուղղափառ հայադաւա-նութենէ հռոմէադաւանութիւն անցնող մը, հաւանաբար տաճկերէն «Ախթամար» բառին ի-մաստով, որ նաւէ մը ուրիշ նաւ փոխա-դրուիլը կը նշանակէ։ Բայց ի դէպ է դի-տել, թէ «Ախթամար» բառը, տառի մը տեղա-փոխութեամբ նման է «Աղթամար» անունին, և «Ախթամար» բառը աւելի ուշ ժամանակներ գոր-ծածական եղած է, երբ Արեւելեայք Աղ-թամարի աթոռը գլուխնին ունենալով զուտ և կատարեալ հայադաւանութիւն կը պաշտ-պանէին, մինչ Արեւմտեայք Կիլիկիոյ աթո-ռին գլխաւորութեամբ հետզհետէ լատինա-կանութեան կամ հռոմէադաւանութեան կող-մը կը հակէին, ինչ որ առիթ տուած էր Աղթամարական և Ախթամարական նմանահնչիւն կոչումներու։ Իսկ թէ Կատուկեցին երբեք այսպիսի միտում մը չունեցաւ, հաստատա-պէս կը քաղուի Օրբելեանի վկայութենէն, որուն անխառն հայադաւան ուղղութիւնը կասկածի չկրնար ենթարկուիլ։ Արդ Օրբել-եան ոչ միայն այսպիսի կասկած մը չտար Կատուկեցիին նկատմամբ, ոչ միայն համար-ձակաբերան գովեստներ կը գրէ անոր վրայ, այլև Անաւարզեցիին ուղղած թուղթովը (ՕՐԲ. Բ. 197), անոր լատինամոլ ընթացքը պախարակած ատեն, բնաւ ակնարկ չունի Կատուկեցիին մասին, որուն պաշտպանու-թեան ալ ձեռնարկած էր, երբ Կիլիկիոյ մէջ զայն գահազուրկ հռչակեցին։ Գործերու ըն-թացքն ալ միեւնոյն բանը կը հաստատէ, որովհետև Կոստանդինի կաթողիկոսական

աթոռին վրայ մնացած երեք տարիներու միջոցին, հայրապետին յարաբերութեանց հետքերն անգամ չտեսնուիր, և ոչ ալ այդ ուղղութեամբ կարգադրութիւն մը եղած կը գտնուի։ Լևոն թագաւոր ինքն ալ զգուշաւոր ուղղութիւն մը կը պահէր միշտ, և միայն Նիկողայոս Դ պապէն Հայոց թագաւորին ուղղուած գիր մը կը տեսնուի 1288 հոկտեմբեր 1'ին գրուած, բայց բոլորովին արտաքին և կրօնականէ տարբեր խնդիրի վրայ (ՍԻՍ. 556)։ Երկրին կացութիւնն ալ խաղաղական էր շնորհիւ Լևոնի քաղաքագէտ կառավարութեան, որ Եգիպտացիներու հետ հաշտութեամբ, Թաթարներու հետ բարեկամութեամբ, և Լատիններու հետ զգուշաւորութեամբ, Կիլիկիոյ հանդարտութիւնը և խռովութեանց հեռացումը կը հոգար։

**ՍՏԵՓԱՆՈՍԻՆ ՊԱՏԻՒՆԵՐ**

**1171.** Ստեփանոս Օրբելեան, Սիսի մէջ, զատկի օրը նոր օծուած կաթողիկոսէն եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստանալով, յատուկ պատուասիրութիւններու ալ առարկայ եղաւ։ Ժամանակէ մը իվեր Անիի եպիսկոպոսներն էին, որ գերագոյն դիրք ստացած էին Հայաստանի մէջ, մինչ հնաւանդ սովորութեամբ Սիւնեաց եպիսկոպոսն էր, որ նախաթոռ դիրք ունէր Հայ եպիսկոպոսութեան մէջ (§ 417)։ Բայց Անին հետզհետէ կորսուած էր իր կարևորութիւնը, և Սիւնիքի դիրքը նորէն բարձրացած էր Օրբելեաններուն՝ Սմբատի և Տարսայիճի շնորհիւ։ Ուստի երբոր Ստեփանոս ձեռնադրութեան կուգար, միաբան թղթով և ընծայիւք դիմում ըրած էին առ կաթողիկոսն վասն նորոգման սուրբ աթոռոյն հին պատուոյ և առաջնանին, որ բարձեալ էր ի վաղնջուց վասն աւերման և կործանման աշխարհիս (ՕՐԲ. Բ. 174)։ Թէ հնաւանդ իրաւունքը և թէ Տարսայիճի ազդեցութիւնը զօրաւոր փաստեր էին Սիւնեաց խնդրանքին համար, ուստի կաթողիկոսը իր կողմէն գրեց շրջաբերական նամակ առնէր մեծագունս, մեծարէր բանիւ և հաստատուն պայմանաւ, և նորոգելով շնորհէր աթոռոյն զմետրապոլտութիւնն։ Օրբելեան, որ զանազան պատճէններ յառաջ բերած է իր պատմութեան մէջ, կը մոռնայ այդ կարևոր կոնդակին պատճէնը արձանագրել։ Կաթողիկոսը արտաքին կերպով ալ կը չքեղացնէ շնորհուած աստիճանը, և զգեցուցանէր Ստեփանոսի զհայրապետական զգեստն ոսկեթել հանդերձով, և դնէր թագ պատուական ի գլուխ նորա. տայր և զեմիփորոնն մեծախորհուրդ զերեք կրկինն, որ մետրապոլտացն է։ Լևոն ալ իր կողմէն ուզեց պատուել և փառաւորել Տարսայիճի որդին, և զգեցուցանէ նմա ի թագաւորական զգեստուց բաց հայրապետական ձևոյն, և դնէ կրկին անգամ թագ պատուական ի համակ ոսկւոյ ի գլուխն, որ և զանուն թագին ինքեանք միթեր կոչէին (ՕՐԲ. Բ. 175)։ Այդ երկու թագերը, զոր ուրիշ տեղ ալ կը յիշէ Օրբելեան, թէ զինքն պատուեցին կրկին թագիւ (ՕՐԲ. Բ. 228), և միթր անունն ալ, զոր շեշտելով կը նշանակէ, մեզի կ'առաջնորդեն հետևցնելու, թէ այս երկուքէն մէկը, որ կաթողիկոսէն նուիրուեցաւ, յունածէս եպիսկոպոսական թագն էր, որ էր Հայ եպիսկոպոսներու հնաւանդ զարդը, և միւսը լատինածէս եպիսկոպոսական խոյրն էր, իր լատին անունովը միթր կոչուած, որ Կիլիկիոյ մէջ սկսած էր գործածական դառնալ Լուկիոս պապէ Գրիգոր Տղայ կաթողիկոսին ղրկուած ընծային հետևանքով (§ 1020), որև կ'երևի թէ այս կերպով առաջին անգամ Կիլիկիայէ Հայաստան կ'անցնէր։ Կաթողիկոսն ու թագաւորը նաև այլ բազում պարգևս մեծամեծս կը նուիրեն Ստեփանոսի, որ հարկաւ շատ ուրիշ ընծաներն ալ ինքն բերած էր, և այնպէս բարձրագոյն փառօք դարձուցանէն զայն իր աթոռը, ուր կը հասնի 1287'ին (ՕՐԲ. Բ. 175), տարի մը և աւելի՝ տունէն անցուցած ըլլալով ձեռնադրութեան երթալու և ետը դառնալու համար։

**ՏԱԹԵՒ ԵՒ ՆՈՐԱՎԱՆՔ**

**1172.** Սիւնեաց աթոռը ոչ միայն իր կարևորութիւնը կորսուած էր, այլ և երկփեղկած ու բաժնուած էր երկու աթոռներու, մէկը Տաթևի և միւսը Նորավանքի մէջ։ Սիւնեաց Յովհաննէս եպիսկոպոսը տեսնելով որ Տաթևի հին աթոռն աւերեալ էր և ապականեալ, եկաւ բնակիլ Նորավանք (ՕՐԲ. Բ. 96), և երբ վախճանեցաւ 1214'ին (ՕՐԲ. Բ. 95) իր յաջորդն Ստեփանոս Փախրըլմեհ, կամ Ֆախր-էլ-Մէահ, Նորավանքը իբրև եպիսկոպոսարան շինեց ու հաստատեց։ Բայց երկու տարիէն վախճանեցաւ 1216'ին,

*և իրեն յաջորդեց Սարգիս որ* «առ կենօք *Նախորդին եպիսկոպոս եղած էր, և ինքն ալ* «բնակէր ի Նորավանս» (ՕՐԲ. Բ. 97)։ *Ասոր ժամանակ* Յովհաննէս հայրեղբօրորդի տեառն Ստեփանոսի, *ուզելով* «լինել առաջնորդ Սիւնեաց», *Աղթամարի կաթողիկոսէն ձեռնադրուելով եկաւ Տաթեւ նստաւ, և այն օրէն բաժանումը սկսաւ։ Իսկ Սարգիս,* «երջանիկն ի հայրապետաց, վասն ոչ լինելոյ շփոթութեան և գայթակղութեան եկեղեցւոյ», *չուզեց ընդդիմանալ, այլ իրեն պահեց Վայոցձոր և Ջահուկ և Նախջուան գաւառները, իբր* «սեփհական ժառանգութիւն» *Նորավանքի աթոռին* (ՕՐԲ. Բ. 99), *և մնացածը թողուց Յովհաննէսի, և Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին ալ բաժանումը հաստատել տուաւ* «անխախտելի գրովք» (ՕՐԲ. Բ. 100)։ *Սարգիս այդ առթիւ անձամբ ալ գացած էր կաթողիկոսին, անկէ ալ Երուսաղէմ ուխտի անցած էր, վասնզի գրուած է թէ* «մարտիրոսացաւ յԵրուսաղէմ» (ՕՐԲ. Բ. 97), *թէպէտ պարագաները ծանօթ չեն պատմութենէն։ Այս բաժանումը կը շարունակէր մինչեւ Օրբելեանի ձեռնադրութեան ատենը, և երկու աթոռներու եպիսկոպոսներուն կենդանութեան՝ իրեն ձեռնադրուիլը, յայտնի կը ցուցնէ թէ Տարսայիճի միտքը Հայաստանի մէջ գերագոյն աթոռ մը հաստատել էր* (§ 1164), «Արքեպիսկոպոս մեծ աթոռոյն Սիւնեաց ի վերայ այլոց եպիսկոպոսացն, որ կային առ և անդ, ամենայն Վայոցձոր», *որ է Նորավանքը*, «և ամենայն ի Տաթեւ» (ՕՐԲ. Բ. 174)։ *Միեւնոյն եղած էր կաթողիկոսին միտքն ալ, երբոր կը հաճէր Օրբելեանին համար կոչել* «պրոտոթրոնոս աթոռակալ Հայոց, այսինքն նախաթոռ լինել և գլուխ ամենայն եպիսկոպոսաց Հայոց», (ՕՐԲ. Բ. 228)։ *Աւելի բացայայտ խօսքով, Հայաստանի վրայ կաթողիկոսական ներկայացուցիչ մը կը հաստատուէր, քանի որ Կիլիկիոյ աթոռին դժուար էր հեռաւոր վիճակներու վրայ անմիջական հսկողութիւն ընել։*

**1173.** *Տարսայիճ իր միտքը ամէնուն ընդունելի ընել տուած էր, և Ստեփանոս* «մեծաւ պատուով» *ճամբայ ելած էր* (ՕՐԲ. Բ. 174)։ *Բայց մինչեւ որ դատնոր միտքերը չփոխուած էին, և իր գալէն* «յետ սակաւուց, խնդրեցաւ եպիսկոպոսացն որ ի Տաթեւ, գնացին առ Այլուղփէան և Բուղամ ամիրայս ուրմանեցին» (ՕՐԲ. Բ. 175)։ *Նախանձին անբաժան ընկերն եղող դաւաճանութիւնն էր, որ նորէն մէջտեղ կ'ելլէր. քաղաքական անկէտներ վերագրելով Ստեփանոսի տրուած պատիւին, կ'ուզէին զայն կասկածելի ընել Թաթար պետութեան և Արղուն խանին աչքին։*

**ՍՏԵՓԱՆՈՍԻ ՆԵՂՈՒԹԻՒՆՔ**

*Բայց մեծ էին Տարսայիճի ազդեցութիւնը և Ստեփանոսի ճարտարութիւնը։ Նոր մետրապոլիտը անձամբ գնաց Արղունի մօտ, ներկայացուց* «զհամակ կոնդակսն, զոր Արղուն ետ նորոգեալ և ընթեռնուլ առաջի իւր» (ՕՐԲ. Բ. 230)։ *Ստեփանոս նոյն առթիւ* «ծանոյց զամենայն որդեգրութեանն»։ *Արղուն հաւանեցաւ տրուած բացատրութեանց, յարգեց ալ Տարսայիճի ազդեցութիւնը,* «յոյժ հաճեցաւ» *Ստեփանոսի պաշտօնին,* «հրամայեաց գրել նմա ըստ իւրեանց օրէնքն սուլխէ, և հաստատեաց զամենայն եկեղեցիս և զմանկունս և զեպիսկոպոսունսն ի տէր Ստեփանոս, և ետ նմա այր ի դրանէն և փայծայ, և այնպէս յուղարկեաց յաթոռն իւր» (ՕՐԲ. Բ. 176)։ *Օրբելեան կը յիշէ նաեւ թէ ինքն այս առթիւ Արղունի ներկայացուց* «զհիֆէճ, որ է կնիք, հայրենեաց մարթաւոր ժառանգութեան զոր ետ հայրն իւր», *որ իրեն իբրեւ իշխանորդւոյ* «հանեալ էր բաժին ժառանգութեան»՝ *Տաթեւ, Նորավանք, Ցաղացքար և Արատես վանքերը, որով ոչ թէ լոկ իբր մետրապոլիտ, այլ և իբր տէր՝ իշխանութիւն կ'ունենար Տաթեւի և Նորավանքի աթոռներուն վրայ, և* «էին իշխանութեամբ հայրենեաւ և մարթաւոր» *իշխող կը լինէր Սիւնեաց եպիսկոպոսարաններուն* (ՕՐԲ. Բ. 230)։ *Իբր հետաքրքրական պարագայ յիշենք, թէ Արղունի մօտ եղած ատեն, Օրբելեան հրաւիրուեցաւ Քաղդէացւոց նեստորական կաթողիկոսին և անոր երկոտասան եպիսկոպոսներուն հետ օրհնել* «զեկեղեցին ի դրանն արքունի զոր աւարտեալ էր մեծ դողն Հոռմայ» (ՕՐԲ. Բ. 230)։ *Թաթարներ արեւմուտք յարձակած ատենին, լոկ հեթանոսական կրօնք մը ունէին, բայց քրիստոնէութեան և իսլամութեան հետ չփութելով անորոշ միջոց մը անցուցին, և իրենց պետերէն մէկը այս, և միւսը այն կրօնքին պատիւ և մերձաւորութիւն կը ցուցնէր։ Ապաղա մինչեւ իսկ Լուգդունի ժողովին պատգամաւոր էր ղրկած* (§ 1158), *Ահմէտ ընդհակառակն*

քրիստոնէութեան հալածիչ մըն էր եղած (§ 1102), իսկ Արղուն նորէն քրիստոնէից բարեկամ էր դարձած, որպէսզի անոնց օգնութեամբ Եգիպտացիները նուաճէ։ Քրիստոնեայք ալ կը յուսային ուրիշէն օգտուելով Թաթարները քրիստոնէութեան դարձնել, և պապեր քանիցս քարոզիչ եկեղեցականներ էին ղրկած անոնց մէջ (ՕՐԲ. Բ. 368)։ Բայց Լատիններէն աւելի Նեստորականներ յաջողած էին իրենց քարոզութիւններով, քանի որ աւելի մօտ էին Թաթարներուն, և դիւրութիւններ ունէին ժողովուրդը շահելու, մինչ Լատիններուն յարաբերութիւնները լոկ քաղաքական կերպարան ունէին։ Բաւական նշանակելի է, որ համէտաղուան պապին ղրկած չարժական սեղանն ու մատուռը՝ հայազգուան եպիսկոպոս մը և նեստորական կաթողիկոս մը կը նուիրագործէին։ Օրհնութիւնը կատարեցին ի ձեռն մեծաւ հանդերձ, և Արղունն պատուական յատուկ նուէրներով, որ խրաքանչիւրին զգեցուցանէր խորով ջեռամբն զզէնսն հայրապետական, զոր կին էր առհմանել, միւս կողմէն ալ առեալ ի ձեռն զխաչն յառաջէր ի մէջ բանակին, եւ հարկանէր, եւ օրհնէր զամենայնն (ՕՐԲ. Բ. 230)։

**ՍՏԵՓԱՆՈՍԻ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՔ**

**1174.** Ստեփանոս իւր հօր ազդեցութեամբը պաշտպանուած, և Թաթար խանին հաստատութեամբը զօրացած, հոգեւոր իշխանութեան գլուխն անցաւ, և սակայն չարունակեց բազում ամս կրել յեպիսկոպոսացն որ ի Տաթեւ (ՕՐԲ. Բ. 228), որոնք ոչ միայն Ստեփանոսի, այլ և յորոց ամս հաւասարեն եկեղեցւոյ, և մինչ ի վախճան կենաց երկոցունց՝ տէր Հայրապետին և տէր Յովհաննէսին, ու դադարեաց խաղաղ և խոնարհութեանն (ՕՐԲ. Բ. 175)։ Այլ թէ ինչչափ ևս ապրեցան այդ երկուքը գրուած չէ, սակայն երկարակեաց եղած պիտի չըլլան, զի Օրբէլեան կը գրէ իրեն համար, թէ Արղունի քովէն եկեալ տէրէր ամենայնին ի վաւր Աստուծոյ, և թէ կային հնազանդութեամբ ի ներքոյ նորա տէր Գրիգորն, որ էր աշակերտ տեառն Յովհաննիսի, և տէր Սարգիս որ ի Նորավանս (ՕՐԲ. Բ. 176)։ Տէր Գրիգորը պէտք է Տաթեւի մէջ նոյն ինքն Ստեփանոսի մէկ փոխանորդը սեպել, միւս երկուքին մահուընէ ետքը այնտեղ հաստատուած, իսկ Սարգիսն ալ Նորավանքին եպիսկոպոսն էր, որ կը գովուի իբր բազում արդիւնս ցուցեալ ի Նորավանս, և գլխաւորապէս Արփա գետին վրայ Արփա գիւղին մօտ շինել տուած զարմանալի, յոյժ բարձր եւ ընդարձակ եւ լոյս կամարջովք (ՕՐԲ. Բ. 175)։ Ստեփանոս թէպէտ կրցաւ բոլոր Սիւնիքի վրայ իշխել ծաղկեցուցանել զբաժանեալ Աթոռս առաջին, բայց Նորավանքի աթոռը չջնջեց, վասն հրաման նոցին, որ բաժանմունքը վաւերացնող առաջին կաթողիկոսաց, այսինքն Կոստանդին Բարձրբերդցիի և Յակոբ Կլայեցիի կողմէն գրուած էին, և միանգամայն Նորավանքի աթոռակալ եղող, Յովհաննէս, Ստեփանոս, Սարգիս, միւս Ստեփանոս, Գրիգոր, և վերջին Սարգիս, առաջին եպիսկոպոսաց կողմէն հաստատեալ էին (ՕՐԲ. Բ. 228)։ Երկու աթոռներուն սեփական իրաւունքները և կալուածները չխախտեց, այլ որոշեց որ ի մէջ երկոցունց սոյն եպիսկոպոսութեան, և ի առաջնորդ և իշխեցող, այսինքն ընդհանուր մետրապոլիտ մը, և բոլոր Սիւնեցիք էին ի անդ և ի մէջ եղեն, և այլեւս իրարու մէջ չըսեն, եթէ դա Տաթեւացի, և կամ Նորավանեցի ես, իսկ եթէ ապագայ ժամանակներու մէջ երկու աթոռներէն որեւէ մէկին առեր հայցէ և դադարի, միւս աթոռը ժառանգէ զգործածս նորա (ՕՐԲ. Բ. 219)։

**ՕՐԲԷԼԵԱՆՑ ԳՈՐԾԵՐ**

**1175.** Օրբէլեաններու և Սիւնիքի պատկանեալ տեղեկութիւնները ամփոփ պահելու նպատակով, Կոստանդին կաթողիկոսի վրայ խօսելու չդարձած, կ'ուզենք համառօտել անոնց պատկանեալ տեղեկութիւնները։ Արղունի իշխանութիւնը միշտ խաղաղութեամբ չարունակեց, ուր անկաւ շփոթութիւն մեծ ի մէջ մեծամեծաց, և Արղուն կասկածելով թէ խորհուրդ նենգութեան էին խորհեալ նմա, իւր զօրապետներէն շատերը հեռահետէ սպաննել տուաւ։ Այդ ատեն ոմանք եդին բարբառս մահու նաև Վրաց թագաւոր Դեմետրէի վրայ, և սպանին զթագաւորն՝ Մովկան կամ Մուղան դաշտի մէջ, 1289ին (ՕՐԲ. Բ. 179)։ Սակայն Արղուն ինքն ալ շատ չապրեցաւ, և ինքն ալ մեռաւ 1289ին (ՀՆԹ. 85), դեղակեր ըլլալով հարճերուն մէկէն, Մուղան դաշտին մէջ, ի տանէ

Թէոդորոսի, որ Ցայսմաւուրքի կարգով յունիս 8'ին կը նշանակուի։ Իրեն յաջորդեց եղբայրը Թեգաթուն, կամ Գունձիաթու, կամ Ուէգայիտ (ՀԵԹ. 59), որ Էրինչի-Թորինչի մականուն ալ առացած է, Գորոյ գերութեան իմաստով։ Ստեփանոս Օրբելեան փութաց անոր ալ այցելել, և ընդունիլ պարզ որպէս յեղբօրէն, միանգամայն առաւ նոր հրաժարով հրամանի վերոյին հայրապետութեանս (ՕՐԲ. Բ. 231)։ Տարսայիճի ալ այցելութեան գացած ըլլալը չպատմուիր, և կ'երևի թէ արգելուած է ծերութեան և տկարութեան պատճառով, վասն զի ինքն ալ վախճանած է 1290'ին, Արփա աւանին մէջ յետ բազում բարեպաշտութեանց և երեւելի գործոց (ՕՐԲ. Բ. 177), զորս իրօք առատացուց Տարսայիճ, թերևս երկկնութեան ապօրէն գարծն ալ քաւելու դիտաւորութեամբ (§ 1159)։ Տարսայիճի մահուանէ ետքը յաջորդութեան խնդիրը գժտութեանց առիթ եղաւ իր զաւակներուն մէջ, և գործը աշխարհական խանին որոշման եկաւ, որ Արղուն անունով յիշուած է (ՕՐԲ. Բ. 177), եթէ չփոթութեան վերագրելի չէ, զի Արղունի մահը 1290'ին, և 1289'ին, և մինչև 1287'ին կը նշանակուի անխտիր, և եթէ պնդուի Օրբելեանի յիշած անունին վրայ, Տարսայիճ Արղունէ առաջ մեռած կ'ըլլայ, և Արղունի մահը հարկ կը լինի յետաձգել մինչև 1290 յունիս ամիսը։ Ինչ ալ ըլլայ թուականի խնդիրը, վերջապէս խանին վճռովն էր, որ Տարսայիճի աւագագոյն որդին Եղիկումը կ'անցնէր ի տեղի հօրն, իշխան ի վերայ ամենայնի։ Բայց սա իշխանութիւնը ձեռք ձգելով, բոլոր կոլուածները չսեփականեց, և եպիսկոպոսօք և վարդապետօք և ազգօք խորհրդակցելով, բաժանեաց ամենայն ժառանգութիւնն եղբայրներուն հետ (ՕՐԲ. Բ. 178)։ Տարսայիճ առաջին կնոջմէն Եղիկումէ զատ ունէր Ստեփաննոս ու Փախրադուլը, սակայն Ստեփաննոս՝ եպիսկոպոս եղած, և կալուածոց բաժին մըն ալ առացած էր հօրմէն (§ 1172), իսկ Փախրադուլ վաղամեռիկ եղած էր պատանեկան հասակին մէջ, մինչ տէգ մօրաւոյն կալեալ մինչ լինել տեառնաչարչարակից ձեռաւքն (ՕՐԲ. Բ. 244)։ Կը մնային Ջալալ եղբայրը՝ զոր Տարսայիճ առացած էր երկրորդ կնոջմէն, և Ասպարիս հօրեղբօրորդին՝ Եղիկում Սմբատեանի զաւակը (§ 1159), որոնց նոր իշխանը բաժիններ սահմանեց։ Եղիկումի օրով խաղաղութիւնն ու բարօրութիւնը կը տիրէին Սիւնիքի մէջ, երբ ամենայն աշխարհ Հայոց աւերեալ և աղաւաղեալ էր։ Այնպէս որ ամենեքեան առհասարակ դիմեալ գային ի տեառն-նորա, և անոր մօտ հանգիստ առեալ գտանէին, և մինչև իսկ Աղուանից կաթողիկոսն Ստեփաննոս, և բազում եպիսկոպոսք և վարդապետք, իրենց ապաստանի տեղ կ'ընտրէին Սիւնիքը, և Ստեփաննոս Մետրապոլիտին հիւրընկալութիւնը կը վայելէին (ՕՐԲ. Բ. 178)

**1176.** Կոստանդին Կատուկեցի կաթողիկոսին պաշտօնավարութիւնը հանդարտ ու կանոնաւոր կը յառաջէր, ցորչափ Լևոն Գ կը թագաւորէր. վասնզի երկուքին մէջ տեսութեանց համաձայնութիւն կար, և իրար հասկնալով խոհական ընթացք մը ունէին ծայրայեղութիւններէ խորշելով, և գրգռիչ խնդիրներ չյուզելով։

ՀԵԹՈՒՄ ՎԱՆԱԿԱՆ

Այս պատճառով 1286 ապրիլ 13'էն, որ Կոստանդին օծուեցաւ, մինչև 1289 փետրուար 6, որ Լևոն վախճանեցաւ, պատմութիւնը միջադէպ մը չյիշեր, խնդիր մը չնշանակեր, եղելութիւն մը չպատմեր։ Կանոնաւոր օրեր պատմութեան նիւթ չեն մատակարարեր, խռովութիւններ և չփոթութիւններ են որ միջադէպներ կը ստեղծեն, և պատմութիւնը կը հարստացնեն։ Լևոնի մահուան պարագաները չունինք, միայն կ'ըսուի թէ Եղեւ եօթն որդի և երեք դուստր (ՍԱՄ. 153). երկու մանչ և աղջիկ մըն ալ վաղամեռիկ եղած էին, իսկ թագուհին Աննա, Կիւռան կոչեցեալ իբր Կիր-Ան, որ է Աննա Տիկին, վախճանած էր 1285'ին և Դրազարկ թաղուած (ՍԱՄ. 152). երբ Լևոն Արղունի այցելութեան գացած էր (ՉԱՄ. Գ. 282)։ Դառնալէն ետքը անոր սուգը կատարեց, և միւս տարին 1286'ին իր երկրորդ որդին Թորոսը ամուսնացուց Կիպրոսի Հուգոն Գ թագաւորին աղջկան Մարգարիտի հետ, քանի որ անդրանիկն Հեթում չէր ուզած ամուսնանալ։ Հեթում թագաժառանգ արքայորդին կանուխէն ինքզինքը բարեպաշտական կենցաղի նուիրած էր, աւանդորդութեամբ Լատին կրօնաւորաց, որոնք հաստատուած ու տարածուած էին

Կիլիկիոյ մէջ, և որոց զարգացման արդիւնք չէին եղած նախորդ կաթողիկոսներ և թագաւորներ, չուզելով Լատիններու հակառակութիւն ցուցնել. ինչպէս նաև յարգելով անհատական խիղճի ազատութիւնը, թէպէտ և իրենք երբեք չեղած չէին իրենց ազգային եկեղեցւոյն ուղղափառութենէն: Այնչափ եղած էր Լևոնի ազատամտութիւնը, որ մինչև իսկ իր թագաժառանգ որդւոյն ներած էր կատարելապէս որդեգրել հռոմէական դաւանութիւն, և կրօնաւորիլ Փրանկիսկեան խոշորագրեալ միաբանութեան մէջ Եղբայր Յովհաննէս անունով: Այս էր պատճառը որ Հեթում իբր կուսակրօնութեան նուիրուած կրօնաւոր՝ չէր ուզած ամուսնանալ, ինչպէս որ ալ մնաց մինչև վերջը: Լատինական կրօնաւորութիւնը կը պահանջէր որ իր հետևողները ընտանեկան բնակութիւնը թողլով վանական կենցաղին ենթարկուին, և բոլոր աշխարհային հոգերէ և զբաղումներէ ձեռք քաշեն: Արդ եթէ Հեթում կրօնաւորութեան հրաւիրուելով վանական կեանք չունէր, և արքունիքին մէջ կը մնար, և պետական գործերով կը զբաղէր, պէտք է ըսել որ կամ ինքն միաբանութեան Երրորդական կոչուած դասակարգին կը պատկանէր, որով վանական կենցաղէ ու ուխտէ ազատ էր, և կամ միաբանութեան վարչութիւնն ու պապութիւնը իրեն համար բացառութիւն ըրած էին, որպէսզի անոր ձեռքով աւելի դիւրաւ կարենան Հայերու մէջ տարածել, և զանոնք հռոմէադաւանութեան և լատինականութեան վարել: Որն և ըլլայ սոյն եղելութիւնը, այսինչ ստոյգ է, թէ հօրը մահուընէ ետքը Հեթում կրօնաւոր անոր իշխանութեան յաջորդեց, և թագաւոր հռչակուեցաւ, թէպէտ չուզեց թագ դնել և օծուիլ, ինչ որ չէր կրնար լծորդուիլ իր կրօնաւորի կացութեան հետ: Այս է պատճառը որ Հեթում, թէպէտ առաջնորդութիւն Հայոց, բայց ոչ միաբանեալ ընդ Քրիստոսի օրհնեալ Աստուծոյ, այլ առանց Քրիստոսի կամաւ դնէին զմեծ կրօնաւորս, որպէս կոչեալ ամ-բիճտեան (ՍԱՄ. 153),

**1177**. Լատին կրօնաւորութեան յիշատակութիւնը կը պահանջէ, որ համառօտ տեղեկութիւն մը տանք անոր ծագման վրայ: Հեթումի մտած Փրանկիսկեան միաբանութեան հիմնադիրն է Փրանկիսկոս Ասիզացին 1182'ին ծնած, Իտալիոյ Ասիզիս (Assisi) քաղաքը, առաջին անունով Յովհաննէս Բեռնարդոնէ (Giovanni Bernardone) որուն Փրանկիսկոս կոչումը իբրև մակդիր անուն տրուած էր, փրանկերէն խօսիլ գիտնալուն համար:

ՓՐԱՆԿԻՍԿՈՍ ԱՍԻԶԱՑԻ

Երիտասարդութենէ առևտրական գործերով զբաղուած, բայց հոգեսէր զգացումներով տոգորուած, և բարոյական ապականութեանց տարածուելէն զզուած, 1206'ին ճգնաւորական կեանքի տուաւ ինքզինքը, կատարեալ աղքատութեամբ և անընչութեամբ, միանգամայն նուիրուեցաւ աւետարանական առաքինութիւններ քարոզել խօսքով և օրինակով: Երկու տարի ետքը հետևողներ ալ սկսած էր ունենալ, և 1209'ին արդէն 129 աշակերտներ ունէր, ամէնքն ալ իրեն պէս բոկոտն ու բացագլուխ, և քուրձ կապայ մը ու չուանէ գօտի մը իբր զգեստ, կեդրոն ունենալով Բորձիունքուլա (Porziuncula) վանքը Ասիզիսոյ մօտ: Իր միաբանութեան կանոնագիրը նախապէս բերանացի միայն ընդունուեցաւ Իննովկենտիոս Գ պապէն 1210'ին, բայց Փրանկիսկոսի աշակերտութիւնը արագ տարածեցաւ բոլոր Եւրոպիոյ մէջ, այնպէս որ 10 տարի ետքը, 1219'ին գումարուած համախմբութեան 5000 կրօնաւորներ ներկայ էին, թող իրենց տեղը մնացածները. որուն վրայ միաբանութեան կանոնագիրը պաշտօնապէս ալ կը հաստատուէր 1223 Նոյեմբեր 20'ին Հոնորիոս Գ պապէն: Վաւերացման յապաղումը յառաջ կու գար վանական դրութեան մէջ մուծուած նորութենէն: Մինչև այն ատեն Արևմուտքի վանականութիւնն ալ, որ բովանդակ Բենեդիկտոս Նուրսիացի աբբային 529'ին հիմնած հաստատութեան ճիւղաւորումներէն կը բաղկանար, արևելեան վանականութեան նման էր, և իւրաքանչիւր վանք առանձին մարմին մը կը կազմէր և թեմական կառավարութենէն կախում ունէր: Փրանկիսկոսի առաջարկած կանոնադրութեամբ, ամէն կողմ ցրուած ու սփռուած վանքեր մէկ ընդհանուր մեծաւորի իշխանութեան ներքև պիտի դառնային, և թեմական կառավարութիւններէ անկա-

խաբար՝ ուղղակի Հռոմի պապին պիտի հպատակէին։ Փրանկիսկեանց հիմնական կանոնները էին անընչութիւն, ողորմութեամբ կամ մուրալով ապրիլ, խոշորակեաց կենցաղ ունենալ, և քարոզութեան զբաղիլ։ Առաջին նպատակը՝ Եւրոպիոյ քրիստոնէից մէջ աւետարանական առաքինութեանց քարոզութիւնն էր միայն, բայց վերջէն ոչ-քրիստոնեաներու քարոզութիւնն ալ աւելցուց, ուղղակի նպատակ ունենալով մահմետականները։ Այս դիտմամբ Ասորիք երթալու համար ճամբայ ելաւ 1212՚ին, բայց ալեկոծութենէ Դալմատիոյ ծովեզերքը ինկաւ, և պարտաւորուեցաւ ետ գալ։ Երկրորդ անգամ 1214՚ին ուզեց Մաւրիտանիա երթալ, բայց Սպանիոյ մէջ հիւանդացաւ և Ափրիկէ չկրցաւ անցնիլ։ Վերջին անգամ 1219՚ին յաջողեցաւ Եգիպտոս հասնիլ և Եգիպտացւոց բանակը մտնել. ուր Մէլիք-Էլ-Քեամիլ սուլտանին առջև հանուեցաւ, և քրիստոնէութեան պաշտպանութեան համար խօսեցաւ, բայց երկրէն հեռացուեցաւ։ Անկէ ետքը այլեւս ինքն չանցափոխուեցաւ, և աշակերտները ցրուեց թէ Եւրոպիոյ քրիստոնեայ տէրութեանց և թէ Ասորիքի, Պաղեստինի, Եգիպտոսի և Մաւրիտանիոյ մահմետական պետութեանց մէջ։ Ինքն վախճանեցաւ 1226 հոկտեմբեր 4՚ին 44 տարեկան, լոկ սրբակեացութեան տարիճանով. բայց ընդարձակ գործի մը հիմնադիր եղած, որ հետզհետէ աճեցաւ և զօրացաւ։

**1178.** Փրանկիսկեան վանականութեան պաշտօնական անունն եղաւ Կրտսեր Եղբարք կոչումը, որ լատին հնչմամբ մեր պատմագիրներէն Մինոր (Minor), Մինօր, Մինորէթ կամ Մինորական գրուած է։ Այս միաբանութենէն զատ, կանանց վանականութիւն ալ հաստատեց Փրանկիսկոս 1212՚ին, բրձազգեաց կուսանաց միաբանութիւն մը, և անոր գլուխը դրաւ Կլարա (Clara, Chiara) կամ Պայծառ Ասսիզացին, որուն անունով Փրանկիսկեան կուսանները աւելի սովոր Աղքատ Կլարեանք կը կոչուին։ Նպատակը աւելի ընդարձակելու համար երրորդ դասակարգ մըն ալ հաստատեց Փրանկիսկոս 1221՚ին, որ Երրորդական կոչուեցաւ, իբր զի այր

ՓՐԱՆԿԻՍԿԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Փրանկիսկեան, և կին Կլարեան միաբանութիւններէ ետքը կու գար։ Ասոր մէջ անխտիր կ՚ընդունուէին այր կամ կին աշխարհականներ, որոնք աշխարհի կենցաղ կը վարէին, բայց կը պարտաւորուէին վանական կանոններու հետևիլ որչափ որ կրնային, և իւրաքանչիւր օր ինչինչ որոշեալ բարեպաշտութիւններ կատարել, որով մասնակից պիտի ըլլային միւս միաբանութեանց, այսինքն Փրանկիսկեանց և Կլարեանց, բոլոր հոգևոր արդիւնքներուն։ Այդ Երրորդականներուն կ՚ակնարկէինք, երբոր Հեթումի ամուսնութենէ և թագաւորական օծումէ խուսափիլը յիշեցինք (§ 1176)։ Թէպէտ ամուսնութիւնը Երրորդականներուն արգիլուած չէր, բայց կ՚երևի թէ Հեթում անդր եւս մղած էր իւր բարեպաշտութիւնը, կամ թէ, ինչպէս ըսինք, առաջին դասակարգին պատկանելով ալ բացառութիւն կը վայելէր։ Փրանկիսկոսի նպատակը ոչ-քրիստոնեաներու քարոզութիւնն էր միայն, երբ որ Եւրոպայէ դուրս քարոզութեան ձեռնարկեց. սակայն իւր աշակերտները առաւելապէս զբաղեցան Արևելեան Քրիստոնեաները հռոմէադաւանութեան դարձնելու, և պապական իշխանութեան ձեռքը զօրաւոր գործիք եղան Հռոմի ազդեցութիւնը տարածելու։ Կրօնաւորները դիւրութիւն ստացան ամէն եղանակ գործածելու, և քաղաքական, առևտրական, կրթական, ուսումնական, բարեպաշտական, տեսակ տեսակ միջոցներով պապութեան ազդեցութիւնը ընդարձակելու։ Կիլիկիոյ Հայ թագաւորութեան մէջ ալ լատինականութեան տարածուելուն մեծ միջնորդը Փրանկիսկեան կրօնաւորները եղան. որոնք նոյն ինքն արքունեաց մէջ՝ գործ և պաշտօն ստանձնեցին, և օգտուելով Լատիններու հետ խնամութիւններէն, ու Լատին տիկիններու գործակցութենէն, հետզհետէ լատինասիրութիւնը աճեցուցին Կիլիկիոյ արքունիքին և ժողովուրդին մէջ, վերջէն ուղղակի Հայ եկեղեցիին մէջ մտնելու համար։ Ասորիք արդէն Փրանկիսկոսի կենդանութենէն իբրև նպատակակէտ ընտրուած էր, և Ասորիքէ Կիլիկիա անցնիլը շատ դիւրին եղաւ։ Փրանկիսկեանց մասին տեղեկութիւնները լրացնելու համար աւելցնենք, թէ երբ Փրանկիս-

կոսի աշակերտութիւնը տարածման առնելու, և հետզհետէ հարիւր հազարէ աւելի եղաւ, այլ և անհրաժեշտ դարձաւ անոր ճիւղաւորումը, որով տասնէ աւելի միաբանութիւններ կան այսօր, որոնք հաւասարապէս իրենց նախահայր կ'ընդունին Փրանկիսկոս Ասիզացին, բայց կանոնադրութեան, աքեմի, կենցաղի և գործունէութեան տեսակէտներով բոլորովին կը տարբերին, և իրարմէ անկախ մարմիններ կը կազմեն, որոնց թուարկութիւնն ու բացատրութիւնը մեր նպատակէն դուրս կը մնայ։

**ՏՈՄԻՆԻԿՈՍ ԴՈՄԻՆԻՆԿԵԱՆՑ**

**1179.** Փրանկիսկեանց համաւոտ տեղեկութիւն մըն ալ տանք Դոմինիկեանց վրայ, որոնց գործունէութեան ասպարէզ դարձաւ Հայաստան, երբ Փրանկիսկեանք Կիլիկիոյ մէջ կը գործէին։ Դոմինիկեանց հիմնադիրն է Դոմինիկոս, ազգանուն Կուզման, (Dominicus Guzman), 1170'ին ծնած Սպանիոյ Կալագորիս (Calahorra) քաղաքը, որ մանկութենէն եկեղեցական ուսմանց և բարեպաշտական կրթութեանց հետեւեցաւ, մինչեւ որ Ոքսամիոյ (Osma) եպիսկոպոսարանին մէջ քահանայ ձեռնադրուեցաւ, և ուսուցչութեան կոչուեցաւ։ Սպանիայէ դուրս ուղեւորութեանց առթիւ, հանդիպեցաւ Գաղղիոյ Ոկիտանիա (Languedoc) նահանգը, ուր Ալբիգեան աղանդաւորներ զօրացած և արտաքին բանութեանց ալ ձեռնարկած էին, նման Պաւղիկեանց (§ 675), որոնցմէ ծագում առած կը կարծուին։ Այս պարագայն թելադրեց Դոմինիկոսի աղանդաւորներու դէմ քարոզչութեան գաղափարը, զոր առաջ ինքն առանձին սկսաւ, յետոյ իրեն ընկերներ սկսաւ ունենալ, որոնք 1206'ին Փանժօ (Fanjeaux) քաղաքի մօտ վարժարան մըն ալ բացին աղանդաւորաց աղջիկները ուսուցանելու, և 1211'ին միաբանութեան ձեւ առին, և 1225'ին Ինոկենտիոս Գ պապին հաւանութիւնը ստացան, միեւնոյն ձեւով և կազմութեամբ՝ զոր Փրանկիսկոս տուած էր իւր կազմած միաբանութեան։ Դոմինիկոս իրեններուն իբր պաշտօնական անուն որոշեց **Քարոզիչ Եղբարք** կոչումը, և միաբանութիւնը հետզհետէ տարածուեցաւ Եւրոպիոյ մէջ, կեդրոն ունենալով Իտալիոյ Բոնոնիա (Bologna) քաղաքը, ուր Դոմինիկոս ինքն ալ հաստատուեցաւ։ Իսկ 1216'ին Հռոմ երթալով, Հոնորիոս Գ պապէն իւր միաբանութեան վաւերացումը ստացաւ դեկտեմբեր 26'ին։ Անկէ ետքը աւելի ազատօրէն սկսան գործել Քարոզիչ Եղբայրները ուղղակի պապական իշխանութեան զօրութեամբ, ամէն միջոցներ գործածելով աղանդաւորներու դէմ, ինչպէս որ ինքն Դոմինիկոս 1213'ին անձամբ գործակցած էր Խաչակիր բանակին, որ Մոնտեփորտիոյ (Monfort) կոմսին հրամանատարութեամբ Ալբիգեանց դէմ քալեց, և սեպտեմբեր 12'ին 16,000 հոգի կոտորեց։ Դոմինիկոս ալ Փրանկիսկոսի նման Դոմինիկեան Կուսանաց և Դոմինիկեան Երրորդականաց կարգեր հաստատեց, իսկ աքեմի համար նշանակեց հասարակ ասուէ ճերմակ կապայ սեւ կրկնոցով։ Դոմինիկոս ալ ճգնութիւններէ հիւծած էր, և վախճանեցաւ Բոնոնիոյ վանքը 1221 օգոստոս 6'ին, 51 տարեկան։ Նա իւր կենդանութեան սկսած էր աշակերտներ յղել Յունաստան և Ասիա, աղանդաւորներու դէմ մաքառումը՝ տարածելով հռոմէադաւանութենէ դուրս գտնուող եկեղեցիներու վրայ, բայց այս դիտումը աւելի ընդարձակուեցաւ իւր մահուանէ ետքը, մանաւանդ երբ Գրիգոր Թ պապ 1229'ին աղանդաւորաց դէմ մաքառելու համար հաւատաքննութեան ատեանները հաստատեց, և 1232'ին այդ ատեաններուն նախագահութիւնն ու դատաւորութիւնը յանձնեց Դոմինիկեան կրօնաւորներուն։ Ինչ որ հաւատաքննութիւնը Արեւմուտքի մէջ գործեց, մեր նպատակէն դուրս կը մնայ, միայն յիշենք թէ Դոմինիկեանք սկսան դէպ Հայաստան ալ ուղղել իրենց կրօնական արշաւանքը, ինչպէս որ շատ մը պարագաներ և յիշատակներ կը հաւաստեն (ՄԻՍ. 383), և զայն հետզհետէ ընդարձակեցին, մինչեւ որ Յովհաննէս ԻԲ պապը 1318'ին Լատին արքեպիսկոպոս մը կը հաստատէր Արեւելեան գաւառներուն մէջ, վեց ենթարկեալ եպիսկոպոսներով։ Այդ ամէն քարոզիչները Դոմինիկեան միաբանութենէ էին, և իրենցմէ գլխաւոր գործիչն եղաւ Բարթողիմէոս Բոնոնիացի (Bartolomeo di Bologna) Մարաղայի եպիսկոպոսը, որ տեղական լեզուներ-

խաբար՝ ուղղակի Հռոմի պապին պիտի հպատակէին։ Փրանկիսկեանց հիմնական կանոններն էին անընչութիւն, ողորմութեամբ կամ մուրալով ապրիլ, խոշորակեաց կենցաղ ունենալ, և քարոզութեան զբաղիլ։ Առաջին նպատակը՝ Եւրոպիոյ քրիստոնէից մէջ աւետարանական առաքինութեանց քարոզութիւնն էր միայն, բայց վերջէն ոչ-քրիստոնեաներու քարոզութիւնն ալ աւելցուց, ուղղակի նպատակ ունենալով մահմետականները։ Այս դիտմամբ Ասորիք երթալու համար ճամբայ ելաւ 1212'ին, բայց ալեկոծութենէ Դալմատիոյ ծովեզերքը ինկաւ, և պարտաւորուեցաւ ետ գալ։ Երկրորդ անգամ 1214'ին ուզեց Մաւրիտանիա երթալ, բայց Սպանիոյ մէջ հիւանդացաւ և Ափրիկէ չկրցաւ անցնիլ։ Վերջին անգամ 1219'ին յաջողեցաւ Եգիպտոս հասնիլ և Եգիպտացւոց բանակը մտնել. ուր Մէլիք-Էլ-Քեամիլ սուլտանին առջեւ հանուեցաւ, և քրիստոնէութեան պաշտպանութեան համար խօսեցաւ, բայց երկրէն հեռացուեցաւ։ Անկէ ետքը այլեւս ինքն չտեղափոխուեցաւ, և աշակերտները ցրուեց թէ Եւրոպիոյ քրիստոնեայ տէրութեանց և թէ Ասորիքի, Պաղեստինի, Եգիպտոսի և Մաւրիտանիոյ մահմետական պետութեանց մէջ։ Ինքն վախճանեցաւ 1226 հոկտեմբեր 4'ին 44 տարեկան, լոկ սարկաւագութեան աստիճանով. բայց ընդարձակ գործի մը հիմնադիր եղած, որ հետզհետէ աճեցաւ և զօրացաւ։

**ՓՐԱՆԿԻՍԿԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ**

**1178.** Փրանկիսկեան վանականութեան պաշտօնական անունն եղաւ Կրտսեր Եղբարք կոչումը, որ լատին հնչմամբ մեր պատմագիրներէն Մինոր (Minor), Մընոր, Մինորէթ կամ Մինորական գրուած է։ Այրերու միաբանութենէն զատ, կանանց վանականութիւն ալ հաստատեց Փրանկիսկոս 1212'ին, քրձազգեաց կուսանաց միաբանութիւն մը, և անոր գլուխը դրաւ Կլարա (Clara, Chiara) կամ Գայծառ Ասսիզացին, որուն անունով Փրանկիսկեան կուսաններ աւելի սովոր Աղքատ Կլարեանք կը կոչուին։ Նպատակը աւելի ընդարձակելու համար ազատ դասակարգ մըն ալ հաստատեց Փրանկիսկոս 1221'ին, որ Երրորդական կոչուեցաւ, իբր զի այր Փրանկիսկեան, և կին Կլարեան միաբանութիւններէ ետքը կու գար։ Ասոր մէջ անխտիր կ'ընդունուէին այր կամ կին աշխարհականներ, որոնք աշխարհի կենցաղ կը վարէին, բայց կը պարտաւորուէին վանական կանոններու հետեւիլ որչափ որ կրնային, և իւրաքանչիւր օր ինչինչ որոշեալ բարեպաշտութիւններ կատարել, որով մասնակից պիտի ըլլային միւս միաբանութեանց, այսինքն Փրանկիսկեանց և Կլարեանց, բոլոր հոգեւոր արդիւնքներուն։ Այդ Երրորդականներուն կ'ակնարկէինք, երբոր Հեթումի ամուսնութենէ և թագաւորական օծումէ խուսափիլը յիշեցինք (§ 1176)։ Թէպէտ ամուսնութիւնը Երրորդականներուն արգիլուած չէր, բայց կ'երեւի թէ Հեթում անդր եւս մղած էր իւր բարեպաշտութիւնը, կամ թէ, ինչպէս ըսինք, առաջին դասակարգին պատկանելով ալ բացառութիւն կը վայելէր։ Փրանկիսկոսի նպատակը ոչ-քրիստոնեաներու քարոզութիւնն էր միայն, երբ որ Եւրոպայէ դուրս քարոզութեան ձեռնարկեց. սակայն իւր աշակերտները առաւելապէս զբաղեցան Արեւելեան Քրիստոնեաները հռոմէադաւանութեան դարձնելու, և պապական իշխանութեան ձեռքը զօրաւոր գործիք եղան Հռոմի ազդեցութիւնը տարածելու։ Կրօնաւորները դիւրութիւն ստացան ամէն եղանակ գործածելու, և քաղաքական, տնտեսական, կրթական, ուսումնական, բարեպաշտական, տեսակ տեսակ միջոցներով պապութեան ազդեցութիւնը ընդարձակելու։ Կիլիկիոյ Հայ թագաւորութեան մէջ ալ լատինականութեան տարածուելուն մեծ միջնորդը Փրանկիսկեան կրօնաւորները եղան. որոնք նոյն ինքն արքունեաց մէջ՝ գործ և պաշտօն ստանձնեցին, և օգտուելով Լատիններու հետ խնամութիւններէն, ու Լատին տիկիններու գործակցութենէն, հետզհետէ լատինասիրութիւնը աճեցուցին Կիլիկիոյ արքունիքին և ժողովուրդին մէջ, վերջէն ուղղակի Հայ եկեղեցիին մէջ մտնելու համար։ Ասորիք արդէն Փրանկիսկոսի կենդանութենէն իբրեւ նպատակակէտ ընտրուած էր, և Ասորիքէ Կիլիկիա անցնիլը շատ դիւրին եղաւ։ Փրանկիսկեանց մասին տեղեկութիւնները լրացնելու համար աւելցնենք, թէ երբ Փրանկիս-

կամ աշակերտութիւնը տարապայման աճեցաւ, և հետզհետէ հարիւր հազարէ աւելի եղաւ, այլ ևս անհրաժեշտ դարձաւ անոր ճիւղաւորումը, որով տասնէ աւելի միաբանութիւններ կան այսօր, որոնք հաւասարապէս իրենց նախահայր կ'ընդունին Փրանկիսկոս Ասսիզացին, բայց կանոնադրութեան, սքեմի, կենցաղի և գործունէութեան տեսակէտներով բոլորովին կը տարբերին, և իրարմէ անկախ մարմիններ կը կազմեն, որոնց թուարկութիւնն ու բացատրութիւնը մեր նպատակէն դուրս կը մնայ։

**ՏՈՄԻՆԻԿՈՍ ԴՈՄԻՆԻՆԿԵԱՆՑ**

**1179.** Փրանկիսկեանց ետևէն համառօտ տեղեկութիւն մըն ալ տանք Դոմինիկեանց վրայ, որոնց գործունէութեան ասպարէզ դարձաւ Հայաստան, երբ Փրանկիսկեանք Կիլիկիոյ մէջ կը գործէին։ Դոմինիկեանց հիմնադիրն է Դոմինիկոս, ազգանուն Կուզման, (Dominicus Guzman), 1170'ին ծնած Սպանիոյ Կալագորիս (Calahorra) քաղաքը, որ մանկութենէն եկեղեցական ուսմանց և բարեպաշտական կրթութեանց հետևեցաւ, մինչև որ Ոքսամիոյ (Osma) եպիսկոպոսարանին մէջ քահանայ ձեռնադրուեցաւ, և ուսուցչութեան կոչուեցաւ։ Սպանիայէ դուրս ուղևորութեանց առթիւ, հանդիպեցաւ Գաղղիոյ Ոկիտանիա (Languedoc) նահանգը, ուր Ալբիգեան աղանդաւորներ զօրացած և արտաքին բռնութեանց ալ ձեռնարկած էին, նման Պաւղիկեանց (§ 675), որոնցմէ ծագում առած կը կարծուին։ Այս պարագայն թելադրեց Դոմինիկոսի աղանդաւորներու դէմ քարոզչութեան գաղափարը, զոր առաջ ինքն առանձինն սկսաւ, յետոյ իրեն ընկերներ սկսաւ ունենալ, որոնք 1206'ին Փանժ (Fanjeaux) քաղաքի մօտ վարժարան մըն ալ բացին աղանդաւորաց աղջիկները ուսուցանելու, և 1211'ին միաբանութեան ձև առին, և 1225'ին Իննովկենտիոս Գ պապին հաւանութիւնը ստացան, միևնոյն ձևով և կազմութեամբ՝ զոր Փրանկիսկոս տուած էր իր կազմած միաբանութեան։ Դոմինիկոս իրեններուն իբր պաշտօնական անուն որոշեց Քարոզիչ Եղբարք կոչումը, և միաբանութիւնը հետզհետէ տարածուեցաւ Եւրոպիոյ մէջ, կեդրոն ունենալով Իտալիոյ Բոնոնիա (Bologna) քաղաքը, ուր Դոմինիկոս ինքն ալ հաստատուեցաւ։ Իսկ 1216'ին Հռոմ երթալով, Հոնորիոս Գ պապէն իր միաբանութեան վաւերացումը ստացաւ դեկտեմբեր 26'ին։ Անկէ ետքը աւելի ազատօրէն սկսան գործել Քարոզիչ Եղբայրները ուղղակի պապական իշխանութեան զօրութեամբ, ամէն միջոցներ գործածելով աղանդաւորներու դէմ, ինչպէս որ ինքն Դոմինիկոս 1213'ին անձամբ գործակցած էր Խաչակիր բանակին, որ Մոնտեփորտիոյ (Monfort) կոմսին հրամանատարութեամբ Ալբիգեանց դէմ քալեց, և սեպտեմբեր 12'ին 16,000 հոգի կոտորեց։ Դոմինիկոս ալ Փրանկիսկոսի նման Դոմինիկեան Կուսանաց և Դոմինիկեան Երրորդականաց կարգեր հաստատեց, իսկ սքեմի համար նշանակեց հասարակ տաւէ ճերմակ կապայ սև կրկնոցով։ Դոմինիկոս ալ ճգնութիւններէ հիւծած էր, և վախճանեցաւ Բոնոնիոյ վանքը 1221 օգոստոս 6'ին, 51 տարեկան։ Նա իր կենդանութեան սկսած էր աշակերտներ յղել Յունաստան և Ասիա, աղանդաւորներու դէմ մաքառումը՝ տարածելով հռոմէադաւանութենէ դուրս գտնուող եկեղեցիներու վրայ, բայց այս դիտումը աւելի ընդարձակուեցաւ իր մահուանէ ետքը, մանաւանդ երբ Գրիգոր Թ պապ 1229'ին աղանդաւորաց դէմ մաքառելու համար հաւատաքննութեան ատեանները հաստատեց, և 1232'ին այդ ատեաններուն նախագահութիւնն ու դատաւորութիւնը յանձնեց Դոմինիկեան կրօնաւորներուն։ Ինչ որ հաւատաքննութիւնը Արևմուտքի մէջ գործեց, մեր նպատակէն դուրս կը մնայ, միայն յիշենք թէ Դոմինիկեանք սկսան դէպ Հայաստան ալ ուղղել իրենց կրօնական արշաւանքը, ինչպէս որ շատ մը պարագաներ և յիշատակներ կը հաւաստեն (ՄԽՍ. 383), և զայն հետզհետէ ընդարձակեցին, մինչև որ Յովհաննէս ԻԲ պապը 1318'ին Լատին արքեպիսկոպոս մը կը հաստատէր Արևելեան գաւառներուն մէջ, վեց ենթարկեալ եպիսկոպոսներով։ Այդ ամէն քարոզիչները Դոմինիկեան միաբանութենէ էին, և իրենցմէ գլխաւոր գործիչն եղաւ Բարթողիմէոս Բոնոնիացի (Bartolomeo di Bologna) Մարաղայի եպիսկոպոսը, որ անդրանիկ լեգունե-

րու տիրանալով, և քարոզելով և ուսուցանելով գիտականի հուչակ ստացաւ, մինչև Հայ վարդապետներէն ալ շատեր սկսան իրեն դիմել լատին լեզուի և Լատինաց մէջ ծաղկող ուսումներու հետևելու համար։ Այդ Բարթուղիմէոսէ սկսաւ Հայաստանի Ունիթորներու (Unitor) կամ միաբանողներու գործունէութիւնը, որուն պարագաները հետզհետէ պիտի պատմենք։

**1180.** Այս էր ընդհանուր կացութիւնը, երբ լատինականութեան վաստակուած Փըրանկիսկեան կրօնաւորն

**ՆԻԿՈՂԱՅՈՍԻ ԹՈՒՂԹԵՐԸ**

Հեթում, Հայոց թագաւորական գահին կը տիրանար, երբ ուրիշ Փրանկիսկեան կրօնաւոր մըն ալ, Հերոնիմոս Ասկուլեցի (Girolamo d'Ascoli), Նիկողայոս Դ անունով, տարի մը առաջ, 1288'ին, պապական աթոռ էր բարձրացած։ Հեթումի առաջին գործը կ'ըլլար, իւր միաբանակից կրօնաւորներէն Յովհաննէս Մոնտեկորվինացին (Giovanni da Montecorvino), ի կարգէ Ֆրամինորաց (Fratres Minores), այսինքն Կրտսեր Եղբարց, իբրև դեսպան Հռոմ ղրկել, խընդրելով ընդունել ի հաղորդութիւն հռովմական սուրբ եկեղեցւոյն (ԿԱԼ. 403)։ Սակայն Հեթում արդէն ընդունուած պէտք էր ըլլար, և երևի թէ իւր թագաւորութեան մասին էր խընդրանքը, սակայն չենք կրնար ճշդել, գրութեան պատճէնը չունենալով։ Նիկողայոս Դ առանց ժամավաճառ ըլլալու 1269 յուլիս 7'ին կը պատասխանէր Հեթումի սրտագին խնդրակցութեամբ, և անոր կը հաղորդէր հռոմէական դաւանութեան ընդարձակ հանգանակ մը, որուն համար Կալանոս լատիներէն էջին մէջ կ'ըսէ, թէ նոյնն էր զոր Կղեմէս Դ պապը Միքայէլ Պալէոլոգ կայսեր առաջարկած էր (ԿԱԼ. 404)։ Նիկողայոս, կը յանձնարարէ, որ եթէ կոչեցելոյ իշխան, ինչպէս լատիներէնին մէջ գրուած է, և ոչ ողջունեա, ինչպէս Կալանոս կը թարգմանէ (ԿԱԼ. 404), զանձն հօժարէի ածել ի այն զամենայն հայրապետս և ժողովուրդս Հայաստանեայց (ԿԱԼ. 405)։ Պապին առաջարկած հանգանակին մէջ (ԿԱԼ. 406-410), Երրորդութեան և Մարդեղութեան կէտերէն ետքը, կը խօսուի եկեղեցւոյ վրայ, կը յիշուին զատ զատ եօթն խորհուրդներ, պատկի համար որևէ լուծում չընդունուիր, բայց կ'ընդունուին Եպիսկոպոսք և երիցունք և այլք հետևողք պապին, և ընդարձակօրէն կը խօսուի Հռոմի պապութեան վրայ, իբրև գերագոյն և մեծ դերութեան և իշխանութեան ի վերայ ընդհանուր եկեղեցւոյ, որուն ամենայն եկեղեցիք և առաջնորդք նոցա պարտին դաւանել և հնազանդութիւն ցուցանել, որուն ատեան և դատաստանն կարէ հատանել զամենայն վճիռս, և մինչև իսկ կ'ըսուի թէ պապութիւնն է, որ կամեցաւ շնորհել զանազան յաղագս իշխանութեանս Քաղուած այլ եկեղեցեաց, մանաւանդ նոցա, որք են պատրիարքականք։ Նիկողայոս Դ Հեթումի գործը դիւրացնելու, և Կիլիկիոյ Հայերուն ազգային հռոմէադաւանութեան անցնիլը յաջողցնելու համար, տէրութեան գլխաւորներուն ալ զատ զատ նամակներ կ'ուղղէ, ինչ որ անշուշտ Մոնտեկորվինացիին թելադրութիւնն էր, նոյն իսկ Հեթումի կողմէ կարգադրուած։ Կալանոս կը յիշէ Մարիամ իշխանուհին, Հայոց թագուհիին քոյրը, որ պէտք է ըլլայ հանգուցեալ Աննա թագուհիի քոյրը, Հեթում Լամբրոնացիին դուստրը, բայց չենք գիտեր թէ որուն ամուսինը և ինչ դիրքի տէր էր։ Կը յիշէ նաև Թորոս արքայեղբայրը, Լևոն սպարապետը, Օշին մարաջախտը, և կը յարէ թէ գրեց և սա այլ իշխանս, և եւս սա ամենայն ժողովուրդն (ԿԱԼ. 411)։ Ինչպէս կը տեսնուի ընդարձակ ծրագրով մը կը պատրաստէր հայադաւանութեան դէմ յարձակումը։

**1181.** Հեթում արդէն պատրաստ էր պապական հրամանին հպատակելու, բայց

**ԿԱՏՈՒԿԵՑԻՆ ԵՒ ՀԵԹՈՒՄ**

պէտք էր նախապէս կաթողիկոսն ալ համոզել նոյն նպատակին, և ահա՛ այս կէտէն կը սկսի Հեթումի կողմէ Կոստանդին կաթողիկոսին դէմ յարուցուած հակառակութիւնը, և Օրբելեան կը վկայէ, թէ սա նախանձ հակառակութեան բերեալ ի սրտին ընդ կաթողիկոսին Կոստանդեայ (ՕՐԲ. Բ. 184), թշնամական դաւաճանութեանց ձեռնարկեց։ Ամէն պարագաներ կը համաձայնին հաստատել թէ հռոմէադաւանութեան խնդիրն էր այդ հակառակութեան պատճառը, և թէ Կատուկեցին չէր համակերպեր պապական հանգանակին ընդունելութեան, որուն Հեթում կանուխէն պատրաստուած էր. մինչ հակառակութեան առիթ չէր ծագեր՝ եթէ

Կատուկեցին եղած ըլլայ առաջին ամբարձոյ ի Սիս (ՍԱՄ․ 152)։ Արդէն Կոստանդինի ընտրութիւնը՝ հակառակ կուսակցութեանց պայքարի առիթ տուած էր, և լատինամիտներու պարագլուխ Գրիգոր Անաւարզայ եպիսկոպոսը կաթողիկոսացնելու համար շարժում մը եղած էր, զոր հազիւ կրցեր էին խափանել Կարմիր-Լերան վանականները, Լեւոնին յայտնելով Անաւարզեցիին ուղղութիւնը (ՕՐԲ․ Բ․ 199)։ Այժմ Լեւոնի տեղ Հեթումն էր, բոլորովին տարբեր զգացումներով տոգորուած, Անաւարզեցիին ուղղութիւնը թագաւորին ընդգրկած ընթացքն էր, ուստի դիւրին եղաւ Հեթումի Կատուկեցիին հակառակորդները իրեն միացնել, և տանել ձեռն երկրորդակից՝ յեպիսկոպոսաց և յիշխանաց զկաթողիկոսութիւնն, նաև ի վարդապետաց իւր։ Թէպէտ անունը տրուած չէ, բայց ակներեւ է, որ Անաւարզեցին է եղած այդ խմբակին գլուխը։ Ինչ բանակցութիւններ և առաջարկներ և ընդդիմութիւններ եղան այդ միջոցին՝ մանրամասնօրէն պատմուած չունինք, բայց պէտք է ըսել թէ կարի շտապաւ մղուեցան գործերը, զի 1289 յուլիս 7ին էր պապին նամակը, և տարին չվերջացած, միեւնոյն 1289 տարին, ինչպէս կը գրէ Օրբելեան (ՕՐԲ․ Բ․ 186), և կը կրկնէ Սմբատի շարունակողը (ՍՄԲ․ 125), խնդիրը իր լուծումին յանգեցաւ Կատուկեցիին գահընկէցութեամբ։

**ԿԱՏՈՒԿԵՑԻՆ ԳԱՀԸՆԿԷՑ**

**1182**․ Այդ նպատակին համար Հեթում հրաւիրեալ զամենեսեան տէրանենգ խորհրդով, առնէ ժողով ի Սիս մայրաքաղաք, և այդ ժողովին մէջ յառաջ կոչէ զտէրն չարաբանս, որոնք դնեն բարբառս բազումս զրպարտս բանից ի վերայ հայրապետին (ՕՐԲ․ Բ․ 184), և զորս յայտնապէս սուտ վկայս կը կոչեն ուրիշներ (ՍՄԲ․ 123)։ Ինչպէս պատմիչին բացատրութիւններէն կը քաղուի, կ'երեւի թէ բնաւ դաւանական կամ վարդապետական խնդիր մը յուզուած չէ, որ կատարեալ աննպաստ պիտի ըլլար Հեթումի նպատակին, և Կատուկեցին իր եկեղեցւոյն հաւատարիմ պաշտպանը և փոփոխութեանց հակառակորդը պիտի երեւար։ Ուստի բոլորովին արտաքին և բարոյական կէտերու վրայ ուզած են կենալ, զորս անարժան և անպատշաճ լուսոյ կ'անուանէ Օրբելեան (ՕՐԲ․ Բ․ 184), և կ'ոտնակէ իբր զերկնաւոր յողբէնաց, և որոց թիւը մինչև ցերեսուն հասած կ'ըսէ, բայց այն երեսուն բարբաջեալ հայհոյիչս ամբողջ չյիշեր, և միայն երկուքը առջեւ կը բերէ իբրեւ նմոյշ։ Առանցմէ մէկն է թէ յառաջ քան զպատարագն ըմպէ զգինի, որուն Օրբելեան չհաւատար, բայց եթէ ըրած ալ ըլլայ, վասն ախորժելեան մարմնոյ ըրած պիտի ըլլայ, կ'ըսէ, որով հայրապետական հանդիսութիւն մը խափանել խորհելով, դեղ մը առած ըլլալը կը պաշտպանէ։ Երկրորդ ամբաստանութիւնն է թէ առնու հարկս ի մե-տանեացն որ ի Հռոմկլայէն, և այդ կէտը կ'արդարացնէ՝ թէ ի հայրապետական կանոնն օրինադրուած է ի տասնից և ի ընծայից և յամենայն ձեռնակերաց դարձանս դահեկանաց տալ յեկեղեցին, և թէ այդ սահման է յամենայն ընդհանրական ժողովս Հայոց և Յունաց և ամենայն ազգաց։ Մանաւանդ որ կաթողիկոսը այդ տուրքի գումարները ոչ եհան զարծաթ կամ երախայրս ի տան Տեառն, այլ տայր ի հաւաքոյէն բերդապահացն, այսինքն է Հռոմկլայի բերդապահ զինուորներուն ռոճիկին կը գործածէր (ՕՐԲ․ Բ․ 187)։ Սակայն այդպիսի դիտողութիւններ աւելորդ էին Սիսի ժողովակին գումարուողներուն, անոնք ոչ միայն բամբասանքներուն անհիմն, այլ զրպարտութիւն ըլլալն ալ գիտէին, և միայն Կատուկեցին հեռացնել կը ջանային, որպէս զի համարձակ իրենց նպատակին ծառայեն։ Ըստ այսմ շուտով վճռեցին, ինչ որ նախապէս որոշած էին, թէ Կատուկեցին հայրապետութեան անարժան է, և պէտք է զայն աթոռէն վար առնել։ Իսկ կաթողիկոսը ոչ ժողովին գնացած է, և ոչ որոշումէ առաջ իրմէ բացատրութիւն ուզուած է, որովհետև պատուիրակներու ձեռքով հաղորդուած է իրեն տրուած որոշումը, և ինքն իր պատասխանը տուած է ցզարհամարհարան (ՕՐԲ․ Բ․ 186), և ոչ թէ ժողովի առջեւ։

**ԺՈՂՈՎԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՆԵՐ**

**1183**․ Հայրապետական աթոռը Հռոմկլայ էր միշտ, և այնտեղ էր կաթողիկոսներու աթոռական բնակութիւնը, սակայն պատմութեան կարգէն կը տեսնուի, թէ ժողովին վերջը Կոստանդին կը դառնայ Սիսի եպիսկոպոսարանին տունը, որ էր մերձ ի քաղաքն Սիս, ուր

Գիւտաքացի կոչէն (ՕՐԲ. Բ. 186), և հիմայ ալ Չէն կաթողիկոսութեան անունով կը ցուցուի քաղաքին հարաւային ծայրը (ՍԻՍ. 216)։ Չենք գիտեր թէ հանդիպմամբ այնտեղ կը գտնուէր Կոստանդին, վասն զի սովէպ կը պատահէր կաթողիկոսներուն թագաւորին մօտ գալը, կամ թէ պատրուակով և կամ հրամանով այնտեղ բերուած էր։ Ամէն առթի մէջ ծանուցացիչ պարագայ մը պէտք է նկատել, որ Սիսի մէջ առանց կաթողիկոսի և կաթողիկոսի դէմ ժողով կը գումարուէր, երբ կաթողիկոսը Սիսի մէջ էր, մինչ եղեւ ծառայն՝ տէրան, և հօտն՝ հովուէն, ինչպէս զայրացմամբ կը դիտէ Օրբելեան (ՕՐԲ. Բ. 184)։ Միգի տարօրինակ պիտի չթուէր կաթողիկոսի մը դատաստանի ենթարկուիլը, եթէ ժողովը օրինաւոր լինէր, եթէ բոլոր եպիսկոպոսներ ու իշխաններ հրաւիրուած ըլլային, և եթէ չարժառիթը սուտ և սուտախորհ նպատակ մը չըլլար, մինչ այս անգամ ափսափոյ գումարուած կուսակիցներու խումբակ մըն էր կաթողիկոսը դատելու յանդգնող ժողովը։ Մենք բացարձակապէս անտեղի պիտի հաշակէինք անոր որոշումը, և ապօրինի Կատուկեցիին գահազրկութիւնը, և անվաւեր նոր կաթողիկոսի ընտրութիւնը, եթէ Կոստանդին ինքն կնճիռը լուծած չըլլար իւր յօժարակամ հրաժարելովը։ Ժողովին կողմէ պատգամաւորութիւն մը անմիջապէս կաթողիկոսին կը ներկայանայ Գրլխարացի տունը, և կը հաղորդէ իրեն դէմ եղած ամբաստանութիւնները և ժողովականին վճիռը։ Իսկ հեզն այն և հանդարտն Կոստանդին, ոչինչ ընդդիմանայր իբր յանկարծակամի եկած, և ոչ ալ պաշտպանութեան կը ձեռնարկէր, և խոնարհամիտ կերպով կը պատասխանէր, թէ դուք յայտնի բանները տեսեր էք, բայց մոռցեր էք զծածուկն, որպէս վկայէ միայն ծածկագէտն, զի իրօք թէորդորէք զիս ըստ այն առնել ամբարշտել յոգիս յանցանս, և գիտեմ թէ չեմ արժանի այսմ աթոռոյս։ Ասոր վրայ կը դառնայ պատգամաւորներուն հարցնել, թէ ինչ պէտք է որ ընէ, և անոնք կը պատասխանեն ինչ որ որոշած էին նոցաորն և ծովքն, և կ'ըսեն. Ի բաց հան է յէն զկաթողիկոսութեան և տուր ցնեզ (ՕՐԲ. Բ. 184)։

**1184.** Կոստանդին հակառակութիւն չի յայտներ, և յանձն առնոյր յօժարութեամբ, միայն գործին հայրապետական և վեհանձն ձեւ մը կու տայ։

ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՀԱՄԱԿԵՐՊԻԼԸ

Կաթողիկոսական զարդերը ամբողջութեամբ կը հագնի, նախարար բազմախաչ, եմիփորոն հինգկրկին, թագ պատուական, գաւազան հայրապետական, և մատանի մեծագին։ Կ'ելլէ, կը կանգնի, և առեալ ի յեռն զօջ որքոյն Գրիգորի, օրհնութիւն մը կը կարդայ Հայոց թագաւորութեան և աշխարհին վրայ, և վերջին խօսքը իւր վրայ դարձնելով կը յաւելու. Գոհանամ զքէն Տէր իմ Յիսուս, որ մերժեցեր զիս մարմնաւոր տառապանաց և անցաւոր պատւոյ և աթոռոյ, և ոչ պահեցեր յօրն մեծ՝ յորում դատաստանին ահեղ և պատիժքն անձանց և աթոռն յաւիտենական։ Տուր այսմ առաջնորդ բարի և հովիւ ընտիր, զի ըստ կամաց քոց հովուեսցէ զժողովուրդ հօտիս քո։ Այլ որդեակս այսոցիկ որ առին զդատաստան քո և նախ քան զօրն իմ տառապեցուցին զիս, դու արասցես իրաւունս ընդ իս և ընդ նոսա։ Այստեղ միջանկեալ դիտողութիւն մը Լուսաւորչի աջը ձեռքն առնելուն վրայ, որուն պէտք պիտի ըլլար փոխաբերական իմաստ տալ, եթէ չուզէինք ենթադրել, թէ կաթողիկոսները նուիրական Աջը հայրապետանոցէ դուրս ալ միասին կը պտտցնէին, զի Կատուկեցին Հռոմկլայէ դուրս կը գտնուէր։ Օրհնութենէն ետքը կը սկսի մէկիկ մէկիկ հանել հայրապետական զարդերը, զորս կը դնէ ի վերայ արժանի աթոռոյ, որ կ'երեւի թէ զգեստները պարունակող սկուտեղն էր։ Եպիսկոպոսութեան սքեմն ալ կը հանէ և զարդերուն վրայ կը դնէ, և կը հագնի մաշկեղէն մի սեւ և յայտ խոյր, և գլուխն ալ փառաւէրոյ կամ գտակ մը կը դնէ ի նոյն մաշկեղինէն, մատանին ու գաւազանն ալ կու տայ ցզգեստաւորն ըսելով. առա զոր խնդրէիք, և այսպէս կը փակուի սրտաշարժ տեսարանը, որ կատարեալ առաքինութեան առոյգ աւհաւաստիայ մըն էր։ Կը նայի չորս կողմը և ողջունելով զամենայն, կ'ելլէ Գլխարացի եպիսկոպոսարանէն, և միայն առ լուէն (ՕՐԲ. Բ. 186) կ'երթայ առանձնանալ, հաւանաբար իւր սիրելի Խորին վանքը, և վարել նոյն վանական կեանքը զոր կաթողիկոսութենէ առաջ ունէր։ Կատուկեցիին անընդդիմադիր համակերպութիւնը, փոխանակ իւր հակառակորդները ու չարերութեան յորդորելու,

նոր կասկածանքի առիթ կը գտնայ։ Կը կարծեն թէ դուցէ եղանիցի յայսմ իշխանութենէ, այսինքն Կիլիկիոյ թագաւորութենէն, և երթեալ է վերին աշխարհն Արեւելից, ուր ընկալեալ մեծ պատուով կաթողիկոսութեան։ Ուստի անմիջապէս եանւէն պաշտօնեաներ յղարկեալ, ըմբռնեն զնա, և տարեալ է բերդն Լամբրոն դնեն ի ներքոյ երկաթի կապանօք (ՕՐԲ. Բ. 186)։ Այսպէս վարդապետն այն և ջերմեռանդն նախանձու և հեռէ, ինչպէս կ'որակէ Օրբելեան Կատուկեցիին հակառակորդները, ոչ շփոթեցան և ոչ յոգնեցան այնու, որ զրպարտութեամբ զայն գահընկէց ըրին, այլև չլթայակապ բանտարկելու չափ առաջ գացին (ՕՐԲ. Բ. 186)։ Ահա մոլեռանդ համէջականութեան հոգեկան զգացումը, և Արեւմուտքի մէջ սկսուած հաւատաքննութեան մէկ օրինակը Արեւելքի մէջ։

**1185.** Մեր այդ դիտողութիւնը ձրի եզրակացութիւն մը չկարծուի, զի այն ուղղակի կը հետեւի վիրոյիշեալ

ԱՐԵՒԵԼԵԱՑ ԸՆԹԱՑՔԸ

կասկածէն, զոր ունեցան լատինամիտ խմբակին գլխաւորները, թէ Կոստանդին կրնար Հայաստան երթալ և միանալ Արեւելեան վարդապետներուն խումբին հետ, որոնց հաստատամիտ հայադաւանութիւնը աշխարհաքարոզ էր։ Այնտեղ կրնար իբրեւ կաթողիկոս պատիւ գտնել և պաշտօն վարել, և տկարացնել Կիլիկիոյ աթոռն ու իշխանութիւնը։ Որեւմն յայտնի էր թէ Կատուկեցին Արեւելեայց համամիտ էր, Հայ եկեղեցւոյ աւանդութեանց վրայ հաստատամիտ էր, համէջական կամ լատինական միջամտութիւններէ հեռու էր, և Հեթումի ու Անաւարզեցիի ուղղութեան և ընթացքին հակառակորդ եղած էր, և անոր համար կը կրէր լատինամիտներուն հալածանքը, երկրորդ զոհ մը Գրիգոր Պարապէծէ եաքը (§ 1037)։ Անտարբեր պէտք չէ նկատուի Կալանոսէն իրեն առաջնորդ ընտրուած լատինամիտ պատմագիրին (ԿԱԼ. 403), և նոյն ինքն Կալանոսի (ԿԱԼ. 411), Կոստանդինի հանդէպ պահած լռութիւնը, որով Յակոբի անմիջական յաջորդ կը նշանակեն Ստեփանոսը, Կոստանդինի անունը կաթողիկոսներու շարքէն իսկ ջնջելով։ Այսչափ անախորժ երեւցած է համէջադաւաններու աչքին Կատուկեցի խոնարհամիտ, այլ հաստատամիտ հայրապետը։ Կիլիկեան խմբակը զգաց, թէ Արեւելքի մէջ լաւ տպաւորութիւն պիտի չըներ՝ ինքնագլուխ գահընկէց ընելնին կաթողիկոս մը, որ լաւ անուն կը վայելէր, ուստի առժամս զանց ըրին նոր կաթողիկոս մը ընտրել, և Ստեփանոս Սկեւռացի վարդապետը պատուիրակ նշանակեցին, իբր զի Տաթեւի վանքին մէջ հաւաքեալ և ատեան մէկն էր, և կրնար աւելի ընդունելի երեւալ Արեւելեայց մօտ։ Անոր յանձնեցին իրենց ժողովակին գիրը, յորում գրեալ էին զպատճառ օծման կաթողիկոսին, միասմի թուելով կազմուած երեսուն գլուխ ամբաստանութիւնները, ամենայն ու ամենայն բանիւք բաղբաջելով հայհոյանօք, և միանգամայն հրաժարական նամակօք կ'առաջարկէին Արեւելեան եպիսկոպոսներուն (ՕՐԲ. Բ. 186), գնալ ի ծովուն նորոգ ընտրութեան հայրապետի (ՕՐԲ. Բ. 187)։ Ստեփանոս Օրբելեան, որ իբր մետրապոլիտ Սիւնեաց և ներկայացուցիչ պատրիարքին Հայոց, գլուխ էր ամենայն եպիսկոպոսաց Հայոց որ յԱրեւելս (ՕՐԲ. Բ. 228), նա գլխաւորապէս կարդաց Սկեւռացի Ստեփանոսի բերած գիրերը, և լսեց անոր բացատրութիւնները, և տեսաւ որ եղած ամբաստանութիւնները երբէք ոչ տային կարծիս ճշմարտիւ ինչ է հասեալ կամ յեկեղեցի (ՕՐԲ. Բ. 187)։ Ասոր վրայ խորհրդակցութիւն ալ տեղի ունեցաւ, և տեսնուեցաւ որ բողոքելու և գործին անվաւերութիւնը մէջտեղ դնելու ալ պէտք չէ մնացած, քանի որ Կատուկեցին կամաւոր հրաժարականովը կատարուած գործողութեան կերպարան մը տուած էր եղելութեան, և բողոքի տեղի չէր թողած։ Ուստի պատգամաւորին ազդարարեցին, թէ մեք ոչ եմք հասու կամ խորհրդակից եղծման, զի և նորոգմանն հաղորդեսցուք, և կատարեալ չէզոքութեան դիրքը առնելով որոշեցին, որ և ոչ ոք իւրովի կամօք եղ ձեռն արար, նոյն և զնորոգ ընտրութիւնն հաստատեսցէ (ՕՐԲ. Բ. 188)։ Այսպէս Կոստանդինի հայրապետութեան վերջանալը, իրական և գործնական հաստատութիւն առաւ, առաջ իր հրաժարականով, և վերջէն Արեւելեայց չէզոքութեամբ։ Կատուկեցիին կաթողիկոսութիւնը տեւեց ամս երեք (ՕՐԲ. Բ. 184), 1286'էն 1289։ Ընտրութիւնը տեղի ունեցած էր ապրիլ 13'ն, իսկ գահընկէցութիւնը կամ հրաժարականը կ'իյնայ 1289'ին վերջերը։

# Տ. ՍՏԵՓԱՆՈՍ Դ. ՀՌՈՄԿԼԱՅԵՑԻ 1290-93

**1186.** *Անտարակոյս է որ Կոստանդինի կաթողիկոսարանի գործերէն հեռանալովը, ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ անոնց ղեկը մնաց Անտաշարգեցիին ձեռքը, որ Սիսի մէջ և Հեթումի մօտ՝ պէտք եղած կարգադրութիւնները կը կատարէր։ Նոյնպէս առոյգ պէտք է ընդունիլ, որ եթէ 1286'ի ընտրութեան ատեն ալ ջանքեր եղան Անտաշարգեցին կաթողիկոսութեան բարձրացնելու, և միայն Լեւոնի իշխանութեամբը այն խափանուեցաւ (§ 1168), հարկաւ միեւնոյն նպատակը կար այս անգամ ալ, երբ Հեթում յաւիտեանն կը թագաւորէր, և այնչափ ջանքեր եղած էին Կոստանդեցին գահընկէց ընելու։ Սակայն երկու բարեկամները մտածած էին, թէ շատ յայտնի պիտի ըլլայ դիտումնին, եթէ այդ կէտն ալ իրականանայ, և հարկաւ լաւ ալ առած էին թէ Արեւելքի մէջ լաւ տպաւորութիւն ըրած չէր իրենց գործը, և լաւ ընդունելութիւն գտած չէ Սկեւռացի Ստեփանոսի պատգամաւորութիւնը։ Ուստի լաւագոյն կը սեպեն այնպիսի կաթողիկոս մը դնել, որ անունը միայն ունենայ, և գործը միշտ իրենց երկուքին ձեռքը մնայ։ Այս նպատակով առանց սպասելու որ պատգամաւորը դառնայ և Արեւելեայց պատասխանը պաշտօնապէս հաղորդէ, կը կանխեն կաթողիկոսական ընտրութեան ձեռնարկել, և աթոռ կը բարձրացընեն «զՍտեփանոս ոմն անապատաւոր» (ՕՐԲ. Բ. 188)։ Կիլիկեան խմբակին այդ հնարքը՝ մէկերկու տարիով կը կանխէր Հռոմի մէջ կատարուած նոյնօրինակ դարձուածէն, որ երբ Նիկողայոս Դ'ի 1292'ին մեռնելէն ետքը, յաջորդութեան պայքարներով երկու տարի պարապ կը մնար աթոռը, 1294'ին պապական աթոռը կը բարձրացուէր Պետրոս Մորոն (Pietro di Moron) անապատաւորը, որ Կեղեստինոս Ե կոչուեցաւ։ Ստեփանոսի ընտրութիւնը տեղի ունեցաւ 1290'ին (ՍՄԲ. 125), անշուշտ տարւոյն առջի օրերը։ Ինքն ըսինք էր Եկեղեաց կամ Երզնկա գաւառի երբեմն արքունական խախ (§ 153) գիւղէն (ՍԱՄ. 163), բայց կանուխէն Կիլիկիա եկած, Հռոմկլայի հայրապետանոցին մէջ մնացած, և աւելի անապատական կեանքի նուիրուած, և սովորաբար Հռոմկլայեցի մականունով ճանչցուած (ՍՄԲ. 125), որ կրճատութեամբ Հռոմայեցի (ՍԱՄ. 152), և երբեմն ալ Կլայեցի գրուած է։ Օրբելեան կը կոչէ զայն, «այր լաւ և մ անձնայն առաքինազարդեալ» (ՕՐԲ. Բ. 188), և յայտնի ըլլալով Օրբելեանի ատելութիւնը՝ Կոստանդեցիին հակառակորդներուն մասին, զորս վարդապետ և քահանայ նախանձոտ և չար կը կոչէ (ՕՐԲ. Բ. 186), կը հետեւցընենք թէ Ստեփանոս Հռոմկլայեցին մաս չէր ունեցած անոնց հետ, այլ միամիտ ու ապիկար լինելուն համար կաթողիկոսանալու արժանի սեպուած է։ Այս կերպով հայրապետական իշխանութիւնը, թէ ոչ իրաւապէս, բայց իրապէս Անտաշարգեցիին ձեռք մնացած է, Հեթումի հետ համերաշխ գործակցութեամբ յաւիտեան ուղղութիւնը յառաջացնելու համար։ Ստեփանոս Սկեւռացին երբ պատգամաւորութենէն դարձաւ, տեսաւ որ նախ քան զդատախանէն Արեւելեայց գործը վերջացած, և նորընտիր Ստեփանոսը՝ է հաստատեալ յաթոռ կաթողիկոսութեան (ՕՐԲ. Բ. 188), և գործը լրացած է առանց Արեւելեայց մասնակցութեան։*

**1187.** *Պէտք չէ որ Ստեփանոսի գործունէութենէն շատ մը սպասենք, ոչ միայն անոր համար, որ ինքն ԼԱՏԻՆՆԵՐՈՒ ԶԵՌԱՆԱԼԸ գրեթէ իւր առաջին անապատական առանձնութիւնը կը շարունակէր Հռոմկլայի մէջ, երբ բոլոր գործեր Սիսի մէջ կը կարգադրուէին Անտաշարգեցիի և Հեթումի ձեռքով, այլեւ անոր համար որ շատ համառօտ եղաւ իւր իշխանութեան տեւողութիւնը, և այն ալ փոթորկալից արկածներու մէջ։ Եգիպտոսի սուլտանները նոր արշաւանքներ բացած էին Ասորիքի վրայ,*

վերջնական կերպով բնաջինջ ընելու համար Լատին կամ քրիստոնեայ տէրութեւնները, որոնք Երուսաղէմի ու Անտիոքն ալ կորսնցնելէ ետքը, տակաւին իրենց ձեռքը կը պահէին Տրիպոլիսը, Պաղոմայիսը, Տիւրոսը, Սիդոնը ու Վերիտոնը։ Ալֆի սուլտան (ՀՍԹ. 85), որ Ելչի-Կուման (ՀՍԹ. 74) և Մէլէքէլ-Մանսուր ալ կոչուած է, 1289'ին առաւ Տրիպոլիսը Փռանգ քանդէ կամ Լատին կոմսի մը նենգութեամբ, և անհուն և անհամար քրիստոնեայ կոտորեց ու գերեց, և եկեղեցիներ ալ քանդեց ու այրեց (ՕՐԲ. Բ. 188), և սար վրայ Լատիններ կեդրոնացան Պաղոմայիսի մէջ, որ է Աքիա, Աքայիա (ՕՐԲ. Բ. 189) և Աքոն (ՀՍԹ. 74) ալ գրուած։ Ալֆի սպանուեցաւ յաջորդ տարին՝ արշաւանքը չնորոգած. և իրեն յաջորդեց որդին Աշրաֆ, որ Խալիլ-Աշրաֆ, կամ Մէլաշարաֆ կամ Մէլասափէրան (ՀՍԹ. 74) ալ կոչուած է։ Սա միւս տարին, 1291'ին արշաւեց Ասորիք Պաղոմայիսը գրաւելու, ուր կեդրոնացած էին բոլոր Լատիններուն մնացածները, Երուսաղէմի և Անտիոքի իշխանները և պատերազմողները, և երեք սպետական կարգերուն, Դամփլըն և Ըսպիթալըն և Ալըմանոն (ՕՐԲ. Բ. 189), այսինքն Տաճարական և Հիւրընկալ և Տեւտոնեան ասպետութեանց հրամանատարները։ Պաղոմայիս ալ իյնալ Եգիպտացւոց ձեռքը նոյն 1298 տարին, և բերաւ Լատիններուն վերջին յոյսը, որոնք Բոլէն առին գեղեցիկ զԱքոր, զՍայտէ, զՊէրութ, այսինքն, Տիւրոսն ու Սիդոնն ու Վերիտոն բերդաքաղաքները, և յայսմ ամի Ընկեցաւ քրիստոնէութիւնն ի ծովէն (ՀՍԹ. 85), այսինքն արեւմտեան քրիստոնեաներուն իշխանութիւնը Ասորիքի ծովեզերքէն ջնջուեցաւ։ Իբրեւ քրիստոնեայ իշխանութիւն կը մնար այդ կողմերը, միայն Հայոց թագաւորութիւնը, և այն պիտի ըլլար այսուհետեւ Եգիպտացւոց յարձակումներուն նպատակակէտը։ Բանի որ Հայոց թագաւորութիւնը Լատիններուն հետ սերտ յարաբերութիւններով, խնամիական կապերով, և կրօնական ու եկեղեցական համաձայնութիւններով, Եգիպտացւոց աչքին առջեւ իբր Լատին իշխանութեանց մաս կը նկատուէր։ Հետեւապէս ալ պիտի չհանդուրժէին, մինչեւ որ զայն ալ կործանեն, ինչպէս որ չյաջողեցան հարուածներով և հետզհետէ տկարանալով և ամփոփուելով, վերջնապէս իյնալ 1375'ին 84 տարի ետքը։ Արդեօք տարբեր պիտի ըլլա՞ր Հայոց Կիլիկեան թագաւորութեան բախտը, եթէ լատինական կապակցութիւններէ բաժնուելով, բարեկամական յարաբերութիւններ մշակէր իր հարեւան պետութեանց հետ։ Եղելութեանց չորքը ենթադրական մակաբերութիւններով լուծել դիւրին չէ, բայց իրական և դրական է որ լատինական յարաբերութիւններ գրգռեցին Եգիպտացւոց թշնամութիւնը, որ չվերջացաւ մինչեւ որ Հայոց իշխանութիւնն ալ չկործանեցաւ։

**1188.** Երբ այս արկածներ տեղի կ'ունենային Ասորիքի մէջ, լաւագոյն կացութիւն մը կը տիրէր Սիւնիքի կողմերը, որ Արեւելեան Հայութեան կեդրոն դարձած էր Օրբելեանց իշխանութեան ներքեւ։

ՕՐԲԷԼԵԱՆՔ ԵՒ ԹԱԹԱՐՆԵՐ

Տարսայիճի որդիներ և եղբօրորդին յետոյ հօրն ընդ միմեանս կային հանդարտութեամբ, Էլիկում և Ջալալ և Լիպարիտ մարմնական իշխանութեամբն պայծառանային, և եղբայրն իւրեանց տէր Ստեփանոս՝ հոգեւոր շնորհօք և բարձր տէրութեամբ շքեղանայր (ՕՐԲ. Բ. 179)։ Էլիկում երկու որդի ունեցած էր, Բուրթէլ ու Բուղտայ անուն, և դուստր մի զոր ամուսնացուցած էր Խաչի Պռոշեան իշխանին հետ։ Հինգ որդի ալ Լիպարիտ ունէր, որոց երէցն էր Սմբատ, Սագունեանց փեսայացած, իսկ երկրորդը՝ Յովհաննէսը Ստեփանոս մետրապոլիտ իրեն քովն առած էր աշակերտութեան, իրեն յաջորդ պատրաստելու համար, և այս նպատակով անոյշ զայն և քաղցրեաց սատամբ և ած ի թագաւորութեան (ՕՐԲ. Բ. 179)։ Օրբելեան կը յիշէ Մամքան քոյր մըն ալ ունենալը, բարի անձնաւորութիւն մը (ՕՐԲ. Բ. 238)։ Իսկ այդ վկայութիւնները առած ատեն կը յայտարարէ, թէ պէտք չէ կարծել իբրեւ մէկը որ զնոր ինչ յօրինէ և պատմէ, վասնզի ինքն է բազմաց լսողաց և ականատեսն գրած է (ՕՐԲ. Բ. 179)։ Սիւնեաց խաղաղ կացութեան հովանաւորն էր եղած Արղուն խան, և կացութիւնը շատ չէր փոխուած իր յաջորդին Կեղաթունի կամ Քեղաթուի օրով (§ 1175), թէպէտ անձնատուր էր բազումին ի կեղծաւորութեան,

և վերջին խեղդամահ եղեւ յաւուրս [illegible] 1292'ին, և իրեն յաջորդեց Պայդու կամ Պայտուն իր ազգականը, որուն համար կը գրէ Հեթում, թէ արար բազում շնորհս եկեղեցեաց (ՀԵԹ. 59)։ Բայց խռովութեան յարողներ դժկամակ եղեն իրեն դէմ, և իրենց կողմը վաստկելով Արղունի որդին Ղազանը, զայն հալածեցին, և Ղազանը նստեցուցին նոյն 1292 տարին։ Սակայն Օրբելեան որ աւելի մօտէն տեսած է անձերն ու գործերը Պայտունին համար այլ կ'ըսէ, թէ եղեւ Մահմետ օրէնօքն, և վարէր զարքայութիւնն [illegible] և [illegible]։ Նա ինքն Պայտուն սպանած է Ջալալ Տարսայիճեանը, Օրբելեանի եղբայրը, որ իրեն բերէ Ամարասի մէջ պահուած Ս. Գրիգորիսի գաւազանը (§ 98), և 36 ակերով համակ ոսկի, աստուածընկալ խաչը, զոր յետոյ Ապաղա խանի կինը Տեսպինա (§ 1141) ձեռք ձգած և Կոստանդնուպոլիս է յղած (ՕՐԲ. Բ. 218)։ Պայտունի իշխանութիւնը տեւած է միայն գարունէ աշուն, և ինքն ալ Ղազանի ձեռք իյնալով սպանուած է (ՕՐԲ. Բ. 220)։ Իսկ Ղազանի յաղթանակին հրամանատարն եղած է Նէվրուզ կամ Նաւրոզ, որ [illegible] (ՕՐԲ. Բ. 219), որուն բանակը ձեռնարկած է ամէն կողմ եկեղեցիներ քակել, քրիստոնեաներ կողոպտել, քահանաներ թըլփատել, ժողովուրդը կոտորել, կին ու աղայ գերել։ Նոյն բաները Նախիջեւանի կողմերն ալ ըրած է, իսկ Տաթեւը Օրբելեան ազատած է կաշառօք և բանաւորութեամբ, մինչ Սրտաղու եպիսկոպոս տէր Տիրացուն չարչարուած ու նախատուած ու կողոպտուած է անոնցմէ (ՕՐԲ. Բ. 221)։ Այսուհանդերձ Ղազանի համար գրուած է, որ թէպէտ առաջ խիստ եցոյց զանձն ատ քրիստոնէայս, այլ յետ հաստատելոյ զթագաւորութիւնն սկսաւ պատուել և սիրել զքրիստոնեայս (ՀԵԹ. 60)։

**1189.** Եթէ ուզենք ալ կարծել թէ Ղազան իր քաղաքագիտական դիտումներով կատարած է այդ փոփոխութիւնը, սակայն հնար չէ մոռցութիւն չդարձնել Հայոց կողմէ եղած ջանքերուն ալ։

ԹԱԹԱՐԱՑ ՀԵՏ

Հազիւ թէ Ղազան իշխանութեան տիրացաւ՝ Ստեփանոս փութաց անոր այցելել, և ինքն կը վկայէ թէ [illegible], ինչ որ հարկաւ Ստեփանոսի անձին և խօսքերուն գործած ազդեցութեան արդիւնքն էր։ Ղազանի տուած շնորհներուն մէջ կար նաև Ստեփանոսի տրուած արտօնութիւնը, որ կարենայ [illegible], միանգամայն պարգեւեց անոր [illegible] ոսկի, որ էր [illegible], գրեալ է ի վերայ զանուն Աստուծոյ և զանին, ինչ որ կ'երեւի թէ ուրիշ տեղ [illegible] կոչուած նշանին հետ միեւնոյն բանն էր (§ 1141)։ Օրբելեան իր այցելութեան ելքը [illegible] կ'անուանէ (ՕՐԲ. Բ. 231), և ասով քիչ առաջ Նէվրուզի ձեռօք կատարուած բռնութեանց կ'ակնարկէ։ Հեթում թագաւորն ալ իր մասնակցութիւնը ունեցած կ'երեւի այդ գործին մէջ։ Նա կանուխէն մեկնած էր Կիլիկիայէ որ Քեղաթուին յաջորդ Պայտունը շնորհաւորէ, սակայն աս արդէն Ղազանի յարձակումովը զբաղած էր, և Հեթում պարտաւորուեցաւ Մարաղայի մէջ սպասել Բաղդէնցի պատրիարքին մօտ, մինչեւ որ գործը յստակուի։ Իսկ երբ Պայտունն ինկաւ և Ղազան գահին տիրացաւ և բարձրացաւ, փութաց անոր մատուցանել իր մեծարանքը։ Այս առթիւ Ղազան հեգնօրէն դիտել տուաւ, թէ նա ոչ իրեն, այլ Պայտունի համար ճամբայ ելած էր, որուն Հեթում կը պատասխանէ, թէ իրենք Թաթարաց գերագահ իշխանութիւնը կը պատուեն, ով ոք ալ ըլլայ զայն վարողը, ինչ որ Ղազանին շատ հաճելի կու գայ և մեծաւ պատուով կ'ընդունի Հեթումը։ Սա ալ համարձակութիւն կ'առնէ ծանուցանել արքային զանցս աղէտից քրիստոնէից, որուն Ղազան կը պատասխանէ, թէ ես ոչ գիտեմ զայդ, այլ Նաւրոզն գործեաց զամենայն. և Հեթումի խնդրանօք կը հրամայէ առժամայն գրել հրովարտակ ընդ ամենայն աշխարհն իւր իշխանութեան, զի մի իշխեսցեն [illegible] եկեղեցեաց և ի քրիստոնեայս, այլ խաղաղութեամբ բնակեսցեն ամենայն ոք, զիւր հաւատ և պաշտօն համարձակ առնելով։ Բայց այժմ ալ կը սկսի խաղաղութիւն տիրել երկրին մէջ, և գլխաւորապէս Հայերուն մէջ։ Իսկ Հեթում մեծաւ պատուով և [illegible] փառօք կը մեկնի Ղազանի մօտէն, և կը դառնայ յաշխարհն իւր Կիլիկիա (ՕՐԲ. Բ. 222)։ Նէվրուզի մասին ալ անտարբեր չմնաց Ղազան,

ոչ միայն զայն պաշտօնանկ ըրաւ, և անոր նշանակեց Խութլուշահ իշխանը, որ Քուրդ, և յետ քրիստոնէութեան օգնական եղեալ էր, այլ և իմանալով Նէվրուզի դաւաճանութեան խորհուրդները, հալածեց զայն ի Խորասան, և անկէ ի Ներքնագոյն Խորասան, մինչև որ [illegible]: Նէվրուզը հալածող զօրքերուն մէջ էին նաև Լիպարիտ և Էաչի (§ 1188), որոնք [illegible]: Օրբելեան Նէվրուզի այս վախճանը պատմելով, կը հաստատէ. Ահա տեսէք [illegible], և կը կնքէ բարձրացնելով գոհութիւն և փառս [illegible] (ՕՐԲ. Բ. 223):

ՍՏԵՓԱՆՈՍԻ ԸՆԹԱՑՔԸ

**1190.** Կիլիկիոյ կողմէ գործերուն ընթացքը շատ համգարտ վիճակ չունէր, վասն զի Տրիպոլիսի և Պտղոմայիսի հետզհետէ անկումը յայտնի սպառնալիք մըն էր Հայոց համար՝ որոնք ինչպէս ըսինք, լատին իշխանութեանց շրջանակին մէջ կը նկատուէին, և Լատինները ու Ասորիքը ամբողջապէս պարպելէն ետքը՝ իրենց միակ ապաւէն և յենարան կը նկատէին Կիպրոսի թագաւորութիւնը ծովին մէջ, և Կիլիկիոյ թագաւորութիւնը ցամաքի վրայ, և անոնց մէջ կը հաւաքէին իրենց մնացորդները: Հեթում Բ ալ կանխած էր, և իրեն նոր կացութիւնը յայտնելով, նոր օգնութիւններ խնդրած էր Նիկողայոս Դ պապէն, և պապն Եւրոպական իշխաններուն յորդորներ ուղղած էր նոր խաչակրութիւն կազմել և Արևելեան քրիստոնէից օգնութիւն հասցնել: Միևնոյն նպատակով էր անշուշտ Հեթումի այցելութիւնը Թաթարներու խանին, զոր արդէն յիշեցինք (§ 1189): Եկեղեցական գործերուն գալով, կ'երևի թէ Ստեփանոս այնչափ հրահպատակ չէր ըլլար Անաւարզեցիին և Հեթումի հրահանգներուն, որ Կոստանդին կը գրէ թէ [illegible] (ԿԱԼ. 411), ինչ որ Կոստանդնի բերանը Հռոմի հանդէպ սարկական ընթացք չունենալ կը նշանակէ: Իսկ իրեն ազնուութեան և հարազատութեան փաստ կը ցուցնէ թէ հրաման տուեր է Սմբատ իշխանի մը ամուսնանալ իր [illegible] Զապէլի Գուխտոն իշխանին դստեր Զապէլի հետ: Լատիններէնին մէջ ըսուած է թէ [illegible] ազգականց էն եղեր, և Ստեփանոսի ընթացքին համար [illegible] բան ալ աւելցուած է, զոր Կոստանդին չէ համարձակած հայերէնին մէջ ալ դնել, գոհանալով ըսել, թէ արենակցութեան արտօնութիւնը տալը [illegible] Հառոմայ (ԿԱԼ. 412): Աւելի յայտնի և նշանակալից փաստի պէտք չունինք իմանալու համար, թէ ինչ տարբեր զգացումներ կը տածէին լատինամիտներ և հայադաւաններ Հայ Եկեղեցւոյն նկատմամբ:

ԾՌԱԶԱՏԻԿԻ ԽՆԴԻՐԸ

**1191.** Ուրիշ պարագայ մըն ալ եկաւ յիշեալ 1292 տարին լատինամիտներու շահադիտութեանց առարկայ ըլլալ բանալ, որ է ծառազատիկը, որ անգամ մըն ալ կը հանդիպէր 1197 թուականէ 95 տարի ետքը, որուն վրայ խօսած ենք իր ատենը (§ 1053): Թէ տոմարական անտարբեր հաշիւը, և թէ ժամանակակիցներէն Հեթում թագաւորի (ՀԱՑ. 519), և Հեթում պատմիչի (ՀԵԹ. 85) վկայութիւնները: 1912 տարին կը ցուցնեն իբրև ծառազատիկի տարի, սակայն Օրբելեանի պատմութեան մէջ՝ [illegible] խօսքը, որ կարծես թէ Անաւարզեցիի կաթողիկոսութեան երկրորդ տարին կ'ակնարկէ, պէտք է իմանալ քիչ վերը յիշուած Ստեփանոս կաթողիկոսի երկրորդ տարին վրայ, և [illegible] փոքրիկ հատուածը միջանկեալ սեպել (ՕՐԲ. Բ. 193), վասնզի անհնար է 1295'ին անոր ծառազատիկի տարին, որուն տոմարական հաշիւէն զատ՝ պատմական պարագաներն ալ կը հակառակին: Ծառազատիկի հաշիւը ոչ միայն Հայերը Յոյներէն կը զատէր, հապա և Իրիոնեան տոմարներուն տարբերութեամբը (§ 383), այլև Լատիններէն ալ, որոնք Իրիոնեան տոմարով կ'ընթանային: Լատիններ լեցուն էին Կիլիկիոյ մէջ, լատինամիտներ կ'իշխէին Հայերուն վրայ, և [illegible] մօտալուտ զատիկի տարբերութիւնը մեծ յուզմունքներու առիթ տալ ընկած էր, զի Լատիններ կը պատրաստուէին տարւոյ 6'ին զատիկ ընել, մինչ Հայերը

գոյն պիտի տօնէին ապրիլ 13'ին։ Հեթում թագաւոր կանխեց գործը քննութեան ենթարկել տալ, հրամայեց «լինել ժողով» (ՀԱՅ. 519), որուն ամանք Ստեփանոս կաթողիկոսն ալ ներկայ եղած կ'ըսուի (ՉԱՄ. Գ. 286), սակայն Հեթում իր յիշատակարանին մէջ անոր անունը չառեր, և Օրբելեան Անտարգեցիին կը վերագրէ գործը. «Եւ հայրապետն մեր տէր Գրիգոր՝ ատեանոր ախոյեանց մեծամեծօ և ի բաց եկաց ի հայրապետութենէն» (ՕՐԲ Բ. 194)։ Հաւանական է կաթողիկոսի նախագահութեամբ կատարուած ժողով մը չեղաւ որոշում տուողը, այլ Անտարգեցիին նախագահութեամբ ատենաւորութեան խորհրդակցութիւն մը, որ որոշում տուաւ ապրիլ 6'ին Զատիկ տօնելու։ Իսկ այս առթիւ Անտարգեցիին հայրապետ կոչուիլը, ոչ թէ նոյն միջոցին հայրապետ գտնուած, այլ յետոյ հայրապետ եղած ըլլալուն իմաստն ունի, և շատ սովորական է ամէն հեղինակներու՝ յետագայ աստիճանին անունով յիշել նախընթաց գործողութիւնները, մինչև իսկ կաթողիկոսի մը համար ծնաւ կ'ըսենք, և չենք խորհիր թէ կաթողիկոսութիւնը վրան ծընած ըլլայ։ Հեթում երկարօրէն կը պատճառաբանէ թէ ուղիղը յունականին հաշիւն էր, և թէ Հայոց հաշիւը «ի սուրբ գրոցն հալածեալ էր», և իբր հաստատութիւն կը յաւելու, «յետոյ զլուսինն աչօք տեսաք» (ՀԱՅ. 519), իբրև թէ կարենար իր աչքով կըշռել լուսինի լման վայրկեանը, մինչ Եւսեբեան և Իրինեան ամարներու տարբերութիւնը, քանի մը վայրկեաններու վրայ հիմնուած հաշիւ է, թէ լուսինը չորսթ օրուան վերջը, թէ ոչ կիրակի օրուան սկիզբը կը հանդիպի։ Ինչ և իցէ, Անտարգեցիի և Հեթումի կարծիքը զօրացաւ. և թագաւորը «բանաւորեամբ տօնեաց և ետ տօնել ամենայն աշխարհին Կիլիկեցւոց զօր Ծաղկազարդին՝ իբր ամն Յարութեան, և արար Զատիկ»։ Բայց ոչ միայն Հայաստանի վիճակները, և Երուսաղէմի Հայերը ապրիլ 13'ին կատարեցին Զատիկի տօնը, այլ նոյն իսկ Կիլիկիոյ մէջ ալ «գործէշտ վանէրն ոչ ընկալան, նաև բազումք յեղեւկաղօսաց և ի վարդապետաց ոչ հաւանեցան» Հեթումի կարգադրութեան, և որոնք որ աւելի երկիւղալից էին, «ի ծածուկ պահեցին», այսինքն Զատիկ ընելէ ետքը աւագ չորսթ ըրին, և նորէն գաղտնի զատիկ տօնեցին։ Իսկ դէմ դնողներէն «բազումք փախեան և աքսորեան հալածական եղեն» (ՕՐԲ. Բ. 195)։ Օրբելեան իբր մըխիթարական և Հայոց դրութեան այժ տուող պարագայ մը կը յիշէ, թէ Երուսաղէմի մէջ աւագ չորսթ երեկոյին իջնող լոյսը, «էջ նշմարեալ ի Գողգոթայի տաճարն», ինչպէս հաստատած են Երուսաղէմ գտնուող և ականատես եղող Հայաստանցի վարդապետներ (ՕՐԲ. Բ. 194)։

ՀՌՈՄԿԼԱՅԻ ԱՌՈՒՄԸ

**1192.** Սակայն Կիլիկեցւոց բարեկամութեան չեղաւ յունականին զատիկին հետևողութիւնը։ Զատիկէն քիչ օր ետքը Աշրաֆ սուլտան անհեղ զօրութեամբ Ասորիք դարձաւ, այս անգամ ալ Լատիններուն վերջին ապաւէն եղող Կիլիկիոյ թագաւորութիւնը ջնջելու միտքով. և յայտնանէ առնուլ երկիրն Կիլիկեցւոց՝ գաղթեցան ի լեռնս և յամրոցս բերդին (ՀԱՅ. 501)։ Իսկ Եգիպտական բանակը ամէն կողմ աւերած և կոտորած սփռելով, ուղղուեցաւ ուղղակի Հռոմկլայի հայրապետանիստ բերդին վրայ, որ Հայոց նշանաւոր ամրութիւններէն մէկն էր, և յարմար չէր Աշրաֆի զայն անտեւէն թողուլ. Կիլիկիոյ ներսերը արշաւած ատեն։ Այլ և ս Եգիպտացի սուլտաններուն նպատակը լոկ ասպատակութիւն չէր, այլ իրենց տիրապետութիւնն ալ ընդարձակել։ Պատմիչները բնաւ յիշատակութիւն մը չունին թէ Հայոց թագաւորական զունդեր Հռոմկլայի պաշտպանութեան փութացած ըլլան, բայց Հռոմկլայ ինքն իրեն ալ մնացած, բաւական երկար դիմադրութիւն ըրաւ Եգիպտացիներուն՝ իր անառիկ դիրքովը և ճարտարարուեստ եօթնպարսպեան ամրութիւններովը։ Պաշարման տևողութիւնը «բազում աւուրս» (ՍԱՄ. 153) կամ ճշտ օրեր ըսուած է (ՍՄԲ. 126), իսկ Օրբելեան հեռու է յակով «ամսօրեայ ժամանակաւ» պատերազմէ ետքը գրուուած կ'ըսէ «զօրաւոր, և ապա ընէրքին բերդն, և ապա զՄարզպանայն Կլայն» (ՕՐԲ. Բ. 190), չուրանակ պատերազմելով «բազմայեաց բաբանօք ծանր քարանց, քարահատ արուեստակաւք և բազմաձեւ զարանամօք» (ՀԱՅ. 501)։ Իսկ կատարեալ գրաւումը ցուցուած է յունիս 28 օրը (ՍԻՍ. 556), որ է ըսել Զատիկէն երկուքուկէս

ամիս նաքը։ Հեթում թագաւոր իր յիշատակարանին մէջ այնպէս բան կը ցուցնէ թէ ինքն Կիլիկիա եղած ըլլայ Հռոմկլայի գրաւման միջոցին, և Թաթարները կը մեղադրէ թէ «զի Նետողացն հեղգացան, և անոր համար Եգիպտացիք առաւել յաջողեցան ընդ որոյն քաղանացեալ»։ Բայց չըսեր թէ ինքն ինչ ըրած է Հռոմկլայի պաշտպանութեան համար (ՀԱՑ. 518), և ոչ ալ կը յիշէ թէ ինչ օգնութիւն տեսաւ Լատիններէն, որոնց այնչափ յարած էր։ Վերագոյն պատմեցինք Հեթումի Թաթարներուն տուած այցելութիւնը, ուր գտնուեցաւ Պայտունի իյնալուն և Ղազանի բարձրանալու միջոցին (§ 1189), ինչ որ յու-նանայքն ժամանակն անցի ունեցաւ (ՕՐԲ. Բ. 218), և ասկէ կրնանք հետեւցնել, որ Հռոմկլայի իյնալէն ետքն էր, որ Հեթում Արեւելք գնաց, Թաթարներու հետ բարեկամութիւնը ամրապնդելու և Եգիպտացւոց դէմ օգնութիւն փութացնելու համար։

**ԳԵՐՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԱՂԷՏՔ**

**1193**. Սոսկալի եղաւ Հռոմկլայի առնուելուն աղէտը, զոր ժամանակակիցներ Երուսաղէմի կործանումին կը նմանցնեն։ Բոլոր ապարանքներ կործանեցան և եկեղեցիներ կոխան եղան, որոնցմէ Թովմաս Հռոմկլայեցի քահանային անունով կը յիշէ Ս. Գրիգոր, Ս. Աստուածածին և Ս. Փրկիչ «եկեղեցիք և գերապայծառ» սուրբ տաճարները, բնակիչները «ի սուր սրոյ մաշեալ» ջարդուեցան, և շատ շատեր «ի գերութիւն վարեցան» (ԹՂԹ. 537)։ Գերի իյնողներուն մէջ էին նաեւ Ստեփանոս կաթողիկոս, 12 եպիսկոպոսներ, բազում քահանաներ և սարկաւագներ։ Կատարածին չափ մեծ եղաւ աւարառութիւնն ալ, «զի կողոպտեցին, կողոպտեցին զամենայն սպասս եկեղեցւոյն և զամենայն զարդարանս»։ Եւ այս կարգին կը յիշուին «Աջ որբոյն Գրիգորի Լուսաւորչին, և գաւազանն և աթոռն և ակունն, յորոյ վերայ պատարագէր զՔրիստոս, և հողաթափն Ներսէս շնորհալւոյ՝ որ է պատուական որբոյն Հայրապետին, և պարեգօտն Ներսէսայ որբեանց, եւս և նշխարք առաքելական և հայրապետական և ամենայն ընտիր մարգարտաց» (ՕՐԲ. Բ. 190), ինչպէս նաեւ «հողաթափ Նշանն սուրբ Վանկոյն» (ԹՂԹ. 537)։ Հարկաւ այդ սրբութեանց մեծահարուստ մասնատուփերն կամ պատեաններն էին որ աւարառուներու բաղձը շարժեցին, բայց կրնային ալ յուսալ որ թանկագնոյ գանձեր քրիստոնեաներուն վաճառել։ Երբոր Ստեփանոս կաթողիկոս Աշրաֆի առջեւ կը հանուի, սուլտանը դիտել կու տայ, որ իրենք հարիւր տարիէ իվեր Հռոմկլային գրաւման կ'աշխատէին և չէին յաջողեր, և կը հարցնէ թէ «ընդէր եղեւ այս, զի այժմ է՞ր կարողութեան այսպէս դիւրաւ է մեզ»։ Կաթողիկոսը խոնարհաբար կը պատասխանէ, թէ կ'երեւի որ «վասն մեղաց մերոց եղեւ», և սուլտանը վրայ կը բերէ, թէ իրեն ալ ինքը երեք անգամ յուսահատելով ետ դառնալ կը մտածէր, բայց երեք անգամ ալ արգելուեցաւ, որով յայտնի կ'ըլլար թէ «Աստուածն յեր մատնեաց զձեզ և զձերդ է յետս» (ՕՐԲ. Բ. 191)։ Պատմիչն այդ խօսքերը յիշելով, անուղղակի կ'ուզէ ակնարկել Հեթումի հետեւած լատինամիտ կամ հռոմէադաւան ուղղութեան։ Աշրաֆ Հռոմկլային մէջ բերդապահներ դնելէ, և ամրութիւններուն նորոգութիւնը հրամայելէ ետքը, երբ կը պատրաստուէր առջեւ երթալ, և «ընկեցել աւերեն» Կիլիկիոյ թագաւորութիւնը (ՀԱՑ. 519), նաեւէն լուր եկաւ թէ Եւրոպայի բանակ մը հասած է Եգիպտոս և Աղեքսանդրիան պաշարած։ Եկողները Նիկողայոս պապին յորդորներուն վրայ ճամբայ ելլող խաչակիրներն էին, որուն համար ալ Հեթում յատուկ խնդրանք հասուցած էր պապին քանի մը Փրանկիսկեան կրօնաւորներու դեսպանութեամբ (ԿԱԼ. 416)։ Այս պատճառով Աշրաֆ ստիպուեցաւ Կիլիկիոյ արշաւանքը ետ թողուլ, և իր երկրին պաշտպանութեան դիմել, որով, կ'ըսէ Հեթում, «եղեւ մեզ ընդարձակութիւն, որպէս ճնճղուկ յորոգայթէ զերծաւ» (ՀԱՑ. 519)։ Աշրաֆ Հռոմկլայի գերիները և աւարները մէկտեղ կը տանէր, Դամասկոսի մէջ «ցուցանէր քաղաքացեացն զկաթողիկոսն շղթայակապեալ ընդ հրապարակն», և Եգիպտոս հասնելով կը բանտարկէր երկաթի կապանօք (ՕՐԲ. Բ. 191)։

**ԱՐԿԱԾԻՆ ՇՈՒՐՋԸ**

**1194**. Ամբաստանի չարանենգը Հռոմկլայի առումը և Ստեփանոսի գերութիւնը պատմելէն ետքը կ'աւելցնէ. «Կարծեմ թէ յանէրաւ էրանց եղեւ, վասն որ Կոստանդեայ ստորերկրին, զի այսմէն վասն նախանձու եղեւ» (ՍՄԲ. 126), և գործած անիրաւութեան հանդէպ՝ աստուա-

ծային պատիժ մը կը համարի վերահաս արկածը։ Միեւնոյն միտքը աւանդ երկուանաց յայտնած էր Օրբելեան, երբոր Հռոմկլայի առնուելուն պատմութիւնը կը սկսէր ըսելով, թէ Բարկացաւ Տէր ի վերայ Ատտանայեան աշխարհս Հայոց, յետ վախճանի ուղղափառութեանն Կոստանդեայ, և մատնեաց ի վրէժխնդրութեան ձեռս եկեղեցւոյն (ՕՐԲ. Բ. 190)։ Իսկ պատմութիւնը աւարտելէն ետքը, յուզեալ բարատանութեամբ կը սկսի յանդիմանել անձ մը, զոր՝ «Հայրապետ և ապարախտ հայրապետն ես» կոչելով, յայտնապէս կ'ակնարկէ Հեթում Բ թագաւորին, այլ անունը տալ չհամարձակիր (ՕՐԲ. Բ. 192), զի դեռ եւս Հեթում կենդանի էր և կը թագաւորէր, երբ ինքը կը գրէր (ՕՐԲ. Բ. 256)։ Արկածին պարագաներն ալ մանրամասնելով, անոր ըրածը և կրած վնասը դէմ դէմի դնելով կը շարունակէ. «Զոր դու ի Գերեզմանէ եկեղեցւոյն արտաքսեցեր, նա զքոյն արտաքսեաց ի մեծ աթոռոյ Հռոմկլային։ Զոր դու յեռամբ մերկացուցեր ի զգեստուց, նա մերկացոյց յեռամբ ստացուածն Մըրայ զոր եբեալ հայրադետն։ Զոր դու ի կողմն և ի բանտ արգելեցեր ի Լամբրոն բերդ, նա զքոյն արգելեաց ի կողմն և ի բանտ անզերծանելի զնդանէն Մըրայ։ Անկէ ետքը եղած կորուստներն ալ թուելով, հայրապետական զարդերը, պատուական թագը, Լուսաւորչի Աջը, կաթողիկոսական գաւազանը, և նոյն իսկ աթոռանիստ հայրապետանոցը, կը հառաչէ. Աւա՜ղ անմտութեանս մերոյ, եթէ յորդորէր զարթնոյ և զպատժոց մտանէաք (ՕՐԲ. Բ. 192)։ Այդ սրտառուչ խօսքերը պերճախօս յայտարարութիւններ են այն զգացմանց, որոնք կը տիրէին նոյն ատեններ Կաթոլիկեցին դաւանակցութեան վրայ, և այն աննպաստ տեսութեանց՝ որով կը նկատուէին Հեթումի և Անաւարզեցիի լատինամիտ գործերը։ Օրբելեան Հռոմկլայի հայրապետանոցին վրայ խօսելով, անոր հիմնարկութիւնը կը վերագրէ Գրիգորիս կաթողիկոսի, որ և Վկայասէր կոչեցաւ (ՕՐԲ. Բ. 192), զոր իզուր սխալ կը կարծէ հրատարակիչը՝ Գրիգոր Բ Վկայասէրի վրայ իմանալով (ՕՐԲ. Բ. 358), զի Օրբելեանի իմացածն նոյն ինքն Գրիգոր Գ Պահլաւունին է, Ներսէս Շնորհալիի եղբայրը (ՕՐԲ. Բ. 193), որուն Վկայասէր ալ կոչուած ըլլալը իր տեղը յիշած ենք (§ 953)։ Իսկ հայրապետական աթոռին Հռոմկլայի մէջ մնալը 140 տարի կը հաշուէ (ՕՐԲ. Բ. 193), ինչ որ կը համապատասխանէ մեր ժամանակագրութեան ալ, որ 1149'ին դրինք անոր սկիզբը (§ 944), և անկէ մինչեւ 1292, ճիշդ 143 տարի անցած է։ Իսկ Հռոմկլայ նստող հայրապետները կը համրէ տասն ինչպէս որ մենք ալ դրինք, Պահլաւունիէն մինչեւ Հռոմկլայեցին, երկու ծայրերն ալ մէջը համրելով։

**ՍՏԵՓԱՆՈՍԻ ՄԱՀԸ**

**1195.** Որչափ ալ Աշրաֆ հապճեպ ետ դարձաւ, սակայն Կիլիկիոյ մէջ ահ ու դողը չվերջացաւ, մանաւանդ երբ լսուեցաւ, թէ Աշրաֆ յաջողեցաւ Աղեքսանդրիոյ վրայ յարձակող Եւրոպացիները վանել, որով ահի և դողով էր հանապազ ի լսելս ամենեցուն՝ հասանել երկրորդ փոյթեան նորա, և յայժ ի նեղութեան և ի տագնապս էր յայսմ ամ ազգս Հայոց, ինչպէս կը գրէ Բաղնեկունքցի Նորոզէ քահանայ 1292'ին (ԹՈՐ. Բ. 436)։ Սակայն Աշրաֆի չյաջողեցաւ յարձակումը նորոգել, որովհետեւ սպանաւ ի ծառայս իւրոց, որ ոչ տայր սուլտանանալ, այլև ինքն յայլոց սպանաւ, և սուլտանութիւնը անցաւ Մելիքնասիրի, կամ Նասըր-Մուհամէտի, Աշրաֆի եղբօր։ Բայց տակաւին կարի մանուկ էր, խնամակալ անուանուեցաւ Կիպուղա, կամ Քէթպուղա Թաթարը, որ ծառայ գնեալ եղած էր, բայց Նասըրը բանտարկել տալով, սուլտանութիւնը սեփականեց Մէլիքհատէլ կամ Մէլիք-էլ-Ատիլ անունով։ Այդ եղելութիւնք տեղի ունեցան 1293'ին, որ տարին եղև սաստիկ սով, զի ամենայն Սարակինոսք մեռանէին, եթէ գրէպանեալ ոչ էր շահէց նախաճեղեն պարէն (ՀԵԹ. 74)։ Այդ պարագաներուն կ'ակնարկէ Հեթում թագաւոր, երբ Եգիպտացիներուն վրայ խօսելով կ'ըսէ, թէ այժմ կան տէր հարուածեալք, անհամբ յանձինս բաժանեալք, ի մի միջոց ու թագաւորով եղեալ (ՀԱՅ. 519)։ Այդ խառնակ միջոցին էր որ երջանիկ և քաջասրտեալ կաթողիկոսն Ստեփանոս, ինչպէս Օրբելեան կը կոչէ Հռոմկլայեցին, եղեալ ամ մի ի բանտի վախճանեցաւ ի նմին։ Եգիպտոսի մայրաքաղաքին։ Քայիրի կամ Գահիրէի մէջ եղող քրիստոնեաներ, զորս տեղացի Ղփտիներէն աւելի այնտեղ գտնուող Հայերուն վրայ ի դէպ է իմանալ, յաջողեցան հրաման առնել բանտարկեալ կաթողիկոսին

*արժանաւոր թաղումն ընելու, և* տարան յեկեղեցի Հռոմայ Առաքելոցն, և այն անդ պատուով եդին ի հանգստի (ՕՐԲ. Բ. 192)։ *Որոշ տեղեկութիւններ կը պակսին յիշուած եկեղեցիին և Ստեփանոսի գերեզմանին վրայ, իսկ մահուան թուականը պէտք է նշանակել* 1293, *գերութենէ տարի մը ետքը։ Օրբելեանի կողմէ տրուած պատուաւոր կոչումները նորէն կը հաստատեն, թէ ամէնուն համոզմամբ Ստեփանոս մասնակցած չէր Կոստանդեցիին դէմ գործուած անիրաւութեան, թէ անիկայ թէպէտ պարզամիտ անապատական, հլու գործիք ու չեղաւ Անաւարզեցիին ձեռքը* (§ 1130), *և թէ պարզապէս անմեղ զոհ մը եղաւ ուրիշներու՝ ապօրինի գործունէութեան։ Անտարակոյս է, որ իբր արդակրօն անապատաւոր մը, համբերութեամբ կրեց նա նաև շղթայական բանտարկութիւնը, և գրեթէ մարտիրոս մը եղաւ իր բազմաչարչար վախճանովը, և միայն Կոլանոսի պէս մոլեռանդի մը անօրինակ զգացումը կրնար գրել, թէ* առաւել յապաստանայն բարկութենէն ըղձալից հաղորդութեան իւրոյ, մնաց ի ներքոյ Բռնաւորական և գանձուց ծերութեան (ԿԱՆ. 416)։

# Տ. ԳՐԻԳՈՐ Է. ԱՆԱՒԱՐԶԵՑԻ

**1196.** *Ստեփանոսի գերութեան մէջ եղած տարին, նոր կաթողիկոս ընել տալու միտք չունեցաւ Հեթում, վասնզի ոչ միայն եկեղեցւոյն կանոնը, այլ և ազգային պատիւն ալ կը պահանջէր, ոտնակոխ չընել և չանարգել իր պաշտօնին զոհ եղած, և օտարներէ հալածուած ու բանտարկուած կաթողիկոսը։ Սակայն եթէ կաթողիկոսի անունը կրող մէկ մը չկար մէջտեղ, կաթողիկոսութիւն վարողը կար։ Անդստին Կոստանդեցիի ընտրութեան օրէն գործի վրայ էր Անաւարզեցին, որ Հռոմկլայեցիին օրով գործերու ալ տիրացած էր, և անհակառակ կը շարունակէր պաշտօնական տեղակալութիւնը, երբ աթոռը անտերունչ էր, և միաբանք յուզուած էին, Հռոմկլայի արկածը ամէնուն աչքը գրաւած էր. և վերահաս նոր վտանգի երկիւղն ալ փարատած չէր։ Եթէ Ստեփանոսի կենդանութեան պատշաճութիւնն ալ կը պահանջէր նոր կաթողիկոս չնստեցնել, ամէն տխրութիւն կը դադրէր, երբ Ստեփանոսի մահուան լուրը կը հասնէր, և այն որ արդէն կաթողիկոսութեան ինքնիշխան վարիչն էր, պաշտօնական կերպով անունն ալ կ'առնէր վրան։ Կարծես նոր ընտրողական գործողութեան ալ պէտք չէ տեսնուած, զի Օրբելեանի բացատրութեամբ համեմատ,* յետ այսր ամենայնի [illegible], առնէ ժողով Թագաւորն Հեթում և տայ ձեռնադրել կաթողիկոս Հայոց զտէր Գրիգոր Անաւարզայ եպիսկոպոս (ՕՐԲ. Բ. 193)։ *Միայն հրամայեալ ձեռնադրութիւն մը կը յիշուի, և կը ցուցնէ թէ եպիսկոպոսներու ժողովը եղած է, ոչ թէ ընտրելու, այլ ձեռնադրութիւն կատարելու համար։ Ծանօթ էր որ լատինամիտ կուսակցութիւնը, որուն հովանաւորն էր Հեթում, լատին միաբանութեան անդամակից կրօնաւորը, կը ջանար Հայ եկեղեցւոյ գլուխն անցընել իր կուսակցութեան պետ Գրիգորը, սակայն անգամ մը Լեւոն թագաւորի կամքն էր արգելք եղած* (§ 1168), *անգամ մըն ալ Արեւելեայց հանդէպ տկարութիւնն էր արգելած* (§ 1186), *իսկ այս անգամ ոչ միայն արգելք մը չկար, այլ և շփոթ պարագաները պատեհ կու տային Հեթումին ազատօրէն գործել, և ամենուն ալ մտադրութիւնը անձնական և պատահական խնդիրներէ հեռացած, միայն կաթողիկոսական աթոռին պահպանութեամբ ու պաշտպանութեամբ էր գրաւուած։ Ահա թէ ինչ պարագաներու մէջ կը յաջողէր Անաւարզեցին՝ այնչափ տարիներէ ի վեր հետապնդած և երկու անգամ յուսախաբ եղած, հայրապետական աթոռին տիրանալը։*

**1197.** *Գրիգոր անձնական յատկութիւններովը կարող անձ մը ճանչցուած էր, և իր ժամանակակից Օրբելեան ալ կը վկայէ, թէ* էր այր գիտնական և առաքինի, ողորմ

եկեղեցւոյ, տօնաւէր և տօնախմբէին տօնից տէրունականաց, և պայծառացուցին յեկեղեցեաց մարտիրոսաց, ջնջէր և ղեկեղ և զբոլորովին լուծէր և յայն աւքէն (ՕՐԲ. Բ. 193): Ասորերէնի ալ հմուտ ըլլալ կը կարծուի, զի է Հռոմայեցւոց, է Յունաց և յԱսորւոց համառօտապէս ժողովեալ պատմութիւն ասորք Կայսեց Թարգմանեաց կ'ըսուի (ԿԱԼ. 419): Առաջին ձիրքը աստուածաբանութիւն ու գիտնականութիւնն է, որ նկատողութեան պիտի առնուի, և երկրորդ կը մնայ եկեղեցասիրութիւնը. զոր սակայն իր անձին անհատական տեսութեամբ, և ոչ իր եկեղեցւոյ աւանդական սկզբունքով կը գործադրէր: Իսկ առաքինութիւնով կ'իմանանք թէ զեղծ ու զեղխ կեանքէ զերծ էր: Իր ծննդավայրն ու առաջին կեանքը անծանօթ մնացած են, հակառակ իր շատ ծանօթ անձ մը ըլլալուն, եթէ չուզենք իրեն է Սսոյ կոչուելէն (ԿԱԼ. 419) հետևցնել, թէ Սիս քաղաքը ծնած ըլլայ, և Մեծքարեցի կոչուելէն ալ հետևցնել՝ թէ Մեծքարի աշակերտութենէն եղած ըլլայ, ուր վարդապետանոց մը կար (§ 1156): Անաւարզեցի մակդիր անունը, որով ընդհանրապէս կը ճանչցուի, պարզապէս Անարզաբա քաղաքի կամ Անաւարզայ եպիսկոպոս ըլլալէն առնուած է (ՕՐԲ. Բ. 252): Ուրիշ անգ իրեն տրուած է Տուրքերիցանց մականունը (ՀԵԹ. 85), որուն ոչ բացատրութիւնը ունինք և ոչ մեկնութեամբ կը գըտնենք. զի եթէ Երիցու տէր կամ քահանայի որդի իմանանք, անմեկնելի կը մնայ երիցանց յոգնակի կիրառութիւնը: Այս կոչումներէն զատ ուրիշ մակդիր անուններ ալ տրուած են իրեն զանազան պարագաներու համեմատ, և կոչուած է Երգեցող (ՉԱՄ. Գ. 284) քաղցր երգող ու երգահան ըլլալուն համար, Հոռոմ (ՕՐԲ. Բ. 179) օտարադաւանութեան յարած ըլլալուն համար, և Ջրօղ պատարագի խորհրդական բաժակին ջուր խառնելու սկսելուն համար: Իր կաթողիկոսութեան բարձրանալն որոշ օրն ալ յայտնի չէ, զի հաշիւի հիմ ըլլալիք պարագայ մը չենք գտներ, և Ստեփանոսի տարի մը բանտարկութիւն կրելն ալ օրը օրին 1292 յուլիս 28՚էն հաշուել ալ հնար չէ: Հետևաբար պիտի գոհանանք 1293 տարւոյն մէջերն դնել Անաւարզեցիին պաշտօնապէս կաթողիկոս օծուիլը: Դիտողութեան արժանի է, որ Անաւարզեցիին ուղղութիւնը յայտնի, և ինքն կանուխէն ընդդիմութեան առարկայ եղած, և առանց ժողովական ընտրութեան և առանց Սիւնեցւոց համաձայնութեան կաթողիկոս հաչակուած ըլլալով ալ, Սիւնեցիք չեն ուզած անոր կաթողիկոսութեան դէմ բողոքել, և ոչ ալ Աղթամարի դէմ ըրած ցոյցերնին կրկնել՝ իրենց համար զատ կաթողիկոս մը դնելով (§ 1040): Այդ զգուշաւոր ընթացքը խրատուած ունինք վերագրել Սիւնեցւոց պետ ու գլխաւորն եղող Ստեփանոս Օրբելեանի խոհականութեան, որ զգացած է անշուշտ թէ հայրապետութեան պառակտումը վտանգաւոր ու կարի վնասակար կ'ըլլար ազգային եկեղեցւոյն, երբ կաթողիկոս մը 'ի թուէն հեռագերութեան մէջ կը վախճանէր: Սիւնեցիք ալ զգացած կ'ըլլան, թէ ամէն զոհողութիւն պէտք էր ընել, որպէսզի աթոռին գոյութիւնն ու հաստատութիւնը չվտանգուի: Սակայն Անաւարզեցիին կաթողիկոսութեան չընդդիմանալով մէկտեղ, Օրբելեան համարձակ ընդդիմացած է անոր ուղղութեան և գործերուն, ինչպէս հետզհետէ պիտի տեսնենք:

ԱՆՁՆԱԿԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔ

**1198.** Անաւարզեցիին կաթողիկոսութեան սկիզբը յաջողութեան նշան մը եղաւ Եգիպտացւոց կողմէն հաշտութեան առաջարկ մատուցուիլը, ինչ որ Հայերուն համար մեծ մխիթարութիւն եղաւ: Քեթպողա որ բռնութեամբ սուլտանութիւնը գրաւած էր (§ 1195) և ներքին թշնամութիւններէ կը վախնար, ստիպուած էր արտաքին թշնամութիւնները կարճել, և միանգամայն չէր համարձակեր իր անգէն հեռանալ: Եգիպտոսի մէջ սկսած սով ու անոր հետևանքը եղող ժանտամահն ալ տխուր աւերածութիւն գործած էին ընդհանրապէս, և ժողովուրդին միտքին մէջ քրիստոնէից դէմ գործուած բռնութեանց համար երկնային պատուհաս կը սեպուէին: Այս զանազան պարագաները, որք իրարու խառնուելով Քեթպողան համոզեցին հանդարտ ձգել Հայերը, ինչ որ Հայոց ալ փնտռած կ'ըլլան էր: Հետևաբար շուտով իրարու

ԱՋԻՆ ԴԱՐՁԸ

համաձայնեցան, Հայոց կողմէն ինչ ինչ անտեղի թողուեցան, եւսոն պրոմոսխեանք զԾոցն եւ զԱղջես. եւ ձեռն սիրոյ եւ Խոստովն զանձոյքն տղեայն Պեհենէ (ՀՅԹ· 85) և զԳերմանիկիա որ է Մարաշ (ՍԻՍ· 556), իսկ Եգիպտացիք դարձուցին իրենց առար առրուած նուիրական սրբութիւնները, որոնց գլուխը Սուրբ Աջը· ինչպէս որ գրուած է, թէ սոյն աւուրս դարձաւ Հայոց Հեթում՝ գնեաց զԱջն Լուսաւորչին եւ զամենայն մասունս ի յանօրինաց, եւ եբեր ի Սիս (ՍՄԲ· 126)։ Հաշտութեան դաշինքին հետ Աջին և ուրիշ սրբութեանց դարձը Հայերու համար մխիթարական պարագայ մըն էր· և անհնար էր որ ամէն կողմ հրաչակուած չըլլար· Այսու հանդերձ Օրբելեան որ Հայոց 746ին, այսինքն 1297ին կը կնքէ իր պատմութիւնը (ՕՐԲ· Բ· 257), Հռոմկլայի առնուելուն առթիւ կը գրէ· «Տէր Աջն եւ Գաւազանն եւ Աթոռն սրբոյն Գրէգորիսի որով գործէին» (ՕՐԲ· Բ· 192), ուստից կը հետևի թէ Աջին դառնալէն լուր չունէր։ Սակայն Օրբելեանի պատմութիւնը հետզհետէ գրուած ըլլալով, պէտք չէ պնդել, թէ այդ կտորն ալ 1297ին գրուած ըլլայ· միւս կողմէ Սմբատի շարունակողին է սոյն աւուրս բացատրութիւնը՝ 1292 և 1297 թուականներուն մէջ կ'իյնայ անորոշ կերպով (ՍՄԲ· 126), որով կրնանք ըսել թէ Աջին դարձը 1293է մէկ երկու տարի ետքը տեղի ունեցած է· և Օրբելեան այն հատուածը գրած ատեն տակաւին Աջին դառնալուն լուրը առած չէր։ Ամէն առթի մէջ պէտք է ընդունիլ թէ Աջին վերադարձը տեղի ունեցաւ Անաւարզեցիին առաջին տարիները, և պահուեցաւ Սիսի մէջ, ուր Անաւարզեցին հաստատեց իր հայրապետանոցը, քանի որ Հռոմկլայ քանդուած էր և Եգիպտացւոց անցած· և միանգամայն ազգային սովորութեան համաձայն էր՝ քաղաքական իշխանութեան կեդրոնին մէջ հաստատել հայրապետանոցն ալ։ Սիմէոն Երևանեցի կաթողիկոս, կը կարծէ թէ Աջը Եգիպտացիներէն Պարսիկներուն անցած, և անոնցմէ 1461ին Աղթամարի Զաքարիա կաթողիկոսին նուիրուած ըլլայ (ՋԱՄ·8), և իր կարծիքը հաստատելու համար կը դնէ թէ՝ «զերեւելի Աջոյն ի Մար գաւառէն տանեալ զաւ-մեկեր, թուոց ղտուեյ .ԻՆ ու ԲՆա» (ՋԱՄ·9)· բայց կ'երևի թէ չէ առած Սմբատի շարունակողին պատմութիւնը, ուր յայտնապէս գրուած է թէ Հեթում գնեաց զԱջ Լուսաւորչին եւ եբեր ի Սիս (ՍՄԲ· 126)։ Մենք ուրիշ առիթներ ալ պիտի ունենանք Աջին վրայ գրելու։

ԿԱՏՈՒԿԵՑԻՆ ԾԻ ՍՐԲԱՐԱՆԸ

**1199**· Անաւարզեցին երբոր կաթողիկոսական աթոռը դրաւեց, և անհակառակ տիրապետութիւնն ալ ապահովեց, Արևելեայց ընդդիմութեան չի հանդիպելով, և անոնցմէ ալ իբրև կաթողիկոս ճանչցուելով, այլ ևս վստահութիւն կրցաւ ունենալ թէ Կատուկեցիին կողմէն իրեն դէմ որևէ շարժում պիտի չըլլայ, կամ եթէ ըլլայ ալ՝ իրեն պիտի չվնասէ, ուստի Հեթումի հաւանեցաւ, և համաձայնեցան անոր դիւրագոյն կեանք մը պատրաստել։ Առաջին անգամ Կատուկեցին Լամբրոնի մէջ (§ 1184) շղթայակապ բանտարկելէն յետոյ, թէպէտ չենք գիտեր թէ որչափ ետքը, «Բարձին զկապանն, Բայց ոչ հանէին յարգելանոցէն», և անկէ մինչև այս ատեն «զամս չորս» Կատուկեցի կաթողիկոսը կը մնայ Լամբրոնի բերդը փակուած (ՕՐԲ· Բ· 186)։ Բանտարկութիւնը տեղի ունեցած էր 1289ին, կը տևէր ուրեմն մինչև 1293, Անաւարզեցիին կաթողիկոսացած տարին։ Միևնոյն թուականը կը գտնուի արձանագրուած նշանաւոր սրբարանին կամ մասունքներու պահարանին վրայ, որ կը պահուէր հիւսիսային Իտալիոյ Աղեքսանդրիա (Alessandria della Paglia) քաղաքին մօտ, Պոսքօ Մարէնկօ (Bosco Marengo) գիւղը, Դոմինիկեանց վանքը, և այժմ կը գտնուի Թուրինոյ կայսերական թանգարանը (ՀԱՑ·498)։ Սրբարանը ընդարձակ յիշատակարան մըն ալ ունի Կատուկեցին կաթողիկոսի մը կողմէ գրուած, և իբրև արհեստի նմոյշ մը յատուկ մտադրութեան առարկայ եղած է Լէյտա (Leijden) գումարուած 1883 տարւոյ Հնախոյզ համաժողովին մէջ (ՍԻՍ· 107-112)։ Յիշատակարանին գլուխը նշանակուած տարին, «յեօթ հարիւր Հայոց թուականն ընդ քառասուն ամաց լրման, եւս եւ երկուց ի սոյն գումարն», որ է Հայոց 742, կամ 1293 տարին, Կատուկեցիէն զատ ուրիշ կաթողիկոսի մը չկրնար պատշաճիլ, սակայն միւս կողմէն գիտենք թէ նոյն տարին Կատուկեցին այլ ևս կաթողիկոս չէր, միայն

թէ անոր բանտարկութենէ ազատուելուն տարին էր, որով իբրեւ ուխտի յիշատակ մը նուիրուած կ'ըլլայ այն Կոստանդինի կողմէ։ Ըստ այսմ 1293 թուականը իր ազատութեան և ուխտին տարւոյն պէտք է վերաբերել, քան թէ շինութեան, որ կրնայ տարի առջն ալ աւարտած ըլլալ։ Յիշատակարանին մասնակի ուսումնասիրութեամբը կը տեսնենք, որ Կոստանդին «անուն թագաւ, անեալ է Կլայն Հռոմայական», եղեր է կաթողիկոս, բայց չըսեր թէ այժմ ալ կաթողիկոս է, և կը յաւելու թէ «արդ», այսինքն է հիմայ ու կաթողիկոսութենէ ետքը, «Սկեւռայ վանաց է հովանաւորեալ, եւրայ տեսուչ այն Տէր տան, և վիճակին էր սեպհական»։ Ասկէ ամենայն իրաւամբ կը հետեւցնենք, թէ Կոստանդին չորս տարի բանտարկութենէ ետքը, Լամբրոնի բերդէն հանուեցաւ, բայց չներուեցաւ իրեն անկէ հեռանալ, և իր Խորին վանքը երթալ Բարձրբերդի կողմերը, այլ իրեն իբրեւ բնակութիւն ու պաշտօնավայր նշանակուեցաւ Սկեւռայ վանքը, որ էր «ընծրեր հայրենատուր ամրոցի տէրանց Լամբրոնի» (ՍԻՍ· 97)։ Խոնարհամիտ հայրապետը, որ անարատնիջ թողեր էր իր աթոռը, ուրախութեամբ ընդունած է Սկեւռայ առաջնորդութիւնը, բանտարկութենէ ետքը, և ոչ թէ կաթողիկոսութենէ առաջ վարած է այդ պաշտօնը, ինչպէս ոմանք կարծեցին (ՀԱՅ· 498), զի կաթողիկոսութենէ առաջ Խորին վանքի առաջնորդ էր (ՕՐԲ· Բ· 184)։ Կոստանդին չյիշատակեր իրեն դէմ եղած անիրաւութիւնը, բայց երկու նշանակալից տողեր կարծես թէ թափանցիկ կերպով կը ցուցնեն անոր սիրտին ցաւը, զի կը գրէ. «Այլ երանի թէ զայս փախեան առնոյր ըրողս պատմաբանեան», և կ'անցնի պատմել Հռոմկլայի առումը և հայրապետին գերութիւնը։ Նոր ցաւեր ալ ունեցանք՝ ըսելը, առաջուընէ ցաւ մը ունեցած ըլլալ է, մինչ ցաւ մը պատմած չէր. ուստի անշուշտ միտքին մէջ իր գահընկէցութեան յիշատակները կը նորոգուէին, որ նոր ցաւերու կ'ակնարկէր։ Նոյն յիշատակարանին մէջ իրեն վրայ խօսելով, կը գրէ թէ «ծերացեալ եմ» է Սկեռայն (ՍԻՍ· 108), ինչ որ բաւական նշանակալից է, թէ ոչ իբրեւ պատիւ մը, այլ իբրեւ բռնադատեալ բնակութիւն մը նշանակուած է իրեն Սկեւռայ վանքը։

ԿԱՏՈՒԿԵՑԻՆ ԵՒ ՍԿԵՒՌԱՅ

1200. Դիտելու արժանի է, որ յիշատակարանին մէջ նոյն ատենի կաթողիկոսին անունը դրուած չէ, թէպէտ երկու անգամ գահութեամբ և օրհնութեամբ յիշուած է Հեթումի անունը։ Չենք կրնար ըսել թէ կաթողիկոս մը չգտնուած ատեն գրուած է յիշատակարանը, որովհետեւ յայտնապէս կ'ըսէ թէ Հռոմկլայի առումը տեղի ունեցաւ «մօտ յառաջ քան զՍրբարան», այսինքն Սրբարանին շինութենէն տարիներ առաջ, մինչ հազիւ տարի մը ետքը արդէն Անաւարզեցին կաթողիկոս եղած էր, որով կամաւոր դիտում կը տեսնուի Անաւարզեցիին անունը չտալու մէջ։ Իսկ Հեթումի անունին պատուով յիշումները, բնաւ իրաւունք չեն տար հետեւցնել, թէ ուրեմն անհաւանական է որ Հեթում յօժարած ըլլայ զնա զԱթոռէն հրաժարեցնել (ՀԱՅ· 498), քանի որ պատմութիւնը յայտնի է, և Օրբելեանի կծու ակնարկը (ՕՐԲ· Բ· 192) երկբայելու տեղի չթողուր։ Ուստի Հեթումի համար ազօթքը՝ «Բարեկ ընդ սորին յարեկողաքեան, և երկարեսցէ որ յեր հասած՝ խոստովանութիւնը» (ՍԻՍ· 109), բարի հոգիի արտայայտութիւններ են։ Իսկ ըսելը թէ «բարեայն Հեթմայ յաւիտենականեան, եւրայ տեսուչ այն Տէր տան», որ է Սկեւռայի առաջնորդ ըլլալուն յիշատակութիւնը (ՍԻՍ· 108), կը ցուցնէ թէ այդ եղած է բանտարկութենէ ետքի միջոցին։ Այս դիտողութիւններէ կը հետեւի թէ աւելիապէս Հեթումի կամքով եղած է Կոստանդինի ազատութիւնը, քան թէ Անաւարզեցիին նախաձեռնութեամբը, որ թերեւս տակաւին չէր սիրեր ազատ վիճակի մէջ տեսնել Կոստանդինը, որ մի՛ գուցէ իրեն ծրագիրներուն դէմ արգելք մը յարուցանէ։ Իսկ Հեթում, որ իր լատինամիտ ուղղութեան հետ, խղճահար բարութիւն մըն ալ կը ձեւացնէր իբրեւ Փրանկիսկեան կրօնաւորութեան նուիրեալ բարեպաշտ մը, բաւական խղճի յուզում ունեցած պիտի ըլլայ, չորս տարի չարաչար Լամբրոնի զնտանին մէջ փակուած պահելով խեղճ Կոստանդինը, և Անաւարզեցին ալ համոզած է Լամբրոնի զնտանէն Լամբրոնի վանքը փոխադրել զայն, և եկեղեցական մխիթարութեան ու դիւրութիւն տալ՝ Սկեւռայ առաջնորդութեամբը։

ՀԵԹՈՒՄԻ ԿՐՕՆԱՒՈՐՈՒԻԼԸ

**1201.** *Երբոր Հեթում կը տեսնէ թէ այլ և ս ամենայն ինչ կարգի մտած և կանոնաւորութիւն առացած է՝ Գրիգորի կաթողիկոսութեամբ և Եգիպտացւոց հետ հաշտութեամբ, ասանկ համոզած կը կարծէ քաղաքական գործերէ բոլորովին քաշուիլ, և այն կրօնաւորութիւնը զոր իբր երկրորդական մը կամ իբրև արտօնեալ մը աշխարհի մէջ կը վարէր, իր ամբողջական կատարելութեամբ հասցնել, Փրանկիսկեանց քուրձէ կապան հագնիլ, և չուան գօտին պատել և վանական կեանք վարել: Արդէն իսկ՝ զատ վեց և ս որդիներ թողած էր Լևոն Գ, ամէնն ալ գործի տէր և կարող անհատներ, որք կրնային թագաւորութիւնը կառավարել: Այդ նպատակով* Եւ շնորհօքն Աստուծոյ նստաւ եղբայրն ի գահն Թորոսն, և ինքն եմուտ ի կարգ և կրօնաւորեցաւ, *և Փրանկիսկեանց վանքը մտաւ, որուն ուր ըլլալը և ինչ անուն ունենալը նշանակուած չէ: Պատմիչը այդ եղելութիւնը կը դնէ 1293 թուականին, որ է նոյն իսկ Անաւարզեցիին կաթողիկոս եղած տարին (ՀՍԹ. 85), սակայն Վենետիկի Փրանկիսկեանց վանքին մէջ նկարուած պատկերին ներքև 1294 տարին ցուցուած է՝ իբր թուական Հայոց թագաւոր Սրանեսի Եղբայր Յովհաննէսին,* [illegible] *այսինքն Փրանկիսկեանց սարօզը առնելուն (ՀԱՅ. 516): Մեզի ալ աւելի յարմար կը թուի այդ 1294 թուականը, որ միջոց մը կը թողու Գրիգորի կաթողիկոսութենէն և Եգիպտացւոց հաշտութենէն ետքը պէտք եղած կարգադրութեամբ զբաղելու: Իսկ պատմիչին տարի չփոխած ըլլալը նշանակութիւն չունենար, քանի որ Հեթումի իբր կրօնաւոր առնելցած Յովհաննէս անունն ալ կը չփոխէ, և Մինոր կոչեցաւ կ՚ըսէ (ՀՍԹ. 85), մինչ Մակար անունը, Հեթում Ա՛ին առած անունն է (§ 1155): Թորոս Հեթումէ ետքը երիցագոյն եղբայրն էր, և կարգով անոր կ՚իյնար յաջորդութիւնը, սակայն հանդերձ Թորոս իբրև թագաւոր չի ճանչցուեցաւ, այլ իբրև տեղակալ կամ ժամանակեալ առանձնեց պարտութիւնը, այսինքն իշխանութիւնը, որով կարծես թէ Հեթում գործէ քաշուած չըլլար, այլ Եղբայր Յովհաննէս անուանովը և Փրանկիսկեան կրօնաւորի առաքոմը կը շարունակէր հսկել թագաւորութեան գործերուն: Այս միջոցներուն պէտք է դնել, Հեթումի քոյրերէն Իսիթայի՝ Յունաց կայսեր Անդրոնիկոս Բ Պալէոլոգի Միքայէլ որդւոյն հետ ամուսնանալը, և Զապլունի Տիրոսի կոմսուհի կոչուիլը՝ ամուսնանալով Կիպրոսի Հենրիկոս թագաւորին եղբօր՝ Ամաուրի Լուսինեանի հետ* (Amaury de Lusignan):

ԱՆԱՒԱՐԶԵՑԻԻՆ ԾՐԱԳԻՐԸ

**1202.** *Անաւարզեցիին առջև այլև ս ասպարէզը բաց էր, այնչափ տարիներէ ի վեր իրեն նպատակ ըրած փոփոխութիւնները մուծանել Հայոց եկեղեցւոյն մէջ, ամբողջապէս ընդգրկելով Լատինացւոց ծէսերն ու սովորութիւններն ալ: Ինքն կաթողիկոս էր, Հեթում թագաւոր իր պաշտպանն էր, զանազան միջոցներով իրեն կողմը շահուած խումբ մըն ալ ունէր, թէպէտ ամբողջ Կիլիկիան չունէր. իսկ Հայաստան իրեն միտքին հակառակ էր: Գրիգոր անգիտակ չէր այդ կացութեան, ուստի կ՚աշխատէր տակաւ առ տակաւ մուծանել իր մտածած նորութիւնները, և առանց աղմուկի ու չփոթի ամէն բան փոխել: Այս նպատակին համար նախ ինքն կը սկսէր անձամբ կատարել իր ծրագիրները, անկէ կաթողիկոսարանին մէջ գործադրել կու տար, միևնոյն ժամանակ արքունեաց երէցներն ալ կը համակերպէին Հեթումի հրամանին ներքև: Անկէ կը սկսէր վանահայրներէն և եպիսկոպոսներէն իրեն համամիտներ գտնել, և մինչև իսկ ընդդիմադիրները համոզելու համար հակաճառութեան կը մտնէր. և հետզհետէ տեղեր ալ իր համամիտներէն և մտերիմներէն նուիրակներ կը ղրկէր, ճարտար կերպով իրեն կողմը գործակիցներ կազմելու: Ըստ այսմ Անաւարզեցին կը զգուշանար բացարձակ հրամաններ արձակել և որոշումներ տալ, այլ կը սպասէր* մինչ Հայրապետաց կարգն էր. որ ընթեռնուն *(ԿԱԼ. 440), վասնզի համոզուած էր ու պէտք կը զգար, որ ընկերք փոփոխութիւնը* ժողովով հաստատէր *(ԿԱԼ. 438): Հետևաբար վառահօրէն կրնանք եզրակացնել, թէ ինչ ալ ըլլան Անաւարզեցիի մտածումները, բաղձանքը և բռնելիքը, անանք ոչ օրէնքի և կանոնի, և ոչ ալ առանձնաբար*

և ասվորութեան այժը ունին, և կը միտին լոկ անհատական գործողութիւններ, որոնց մասին ինքն ալ կ'ընդունի, թէ իրեն հնար է լսել, Մի՛ փոխեր զսահմանս զոր եդին հարքն քո (ԿԱԼ. 448)։ Ըստ այսմ լատինամիտներ կամ լատինասէրներ, որոնք կը կարծեն կաթողիկոսական իշխանութեան հեղինակութեամբ ճոխանալ Անաւարզեցիին վրայ կըթնելով, խրատունք չունին այդ կողմէն փաստ մը քաղել, քանի որ ինքն Անաւարզեցին կը խոստովանի թէ ժողովի հաստատութեան պէտք կայ. և միւս կողմէն ալ յայտնի է թէ իւր օրով բնաւ ժողով գումարուած չէ։ Այս դիտողութիւնը կ'ընենք Անաւարզեցիին գործը Անաւարզեցիին միտքով կշռադատելու համար, զի մեր համոզմամբ ժողով մը եղած ատեն ալ, պէտք է ոչ թէ նիւթական գումարումով գոհանալ, այլ ժողովին օրինաւորութեան և հեղինակութեան պայմաններն ալ քննել, ու անոնցմէ եզրակացութեան յանգիլ։

**1203**. Անաւարզեցիին լատինամիտ փոփոխութեանց մասին ընդարձակօրէն խօսելու չակսած, անցողակի յիշենք Սիսի և Աղթամարի աթոռներուն յարաբերութեանց անկարկ մը, որ

ԱՂԹԱՄԱՐԻ ԱՐՁԱԿՈՒՄԸ

կը գտնուի Անաւարզեցիին գրութեան մէջ, ուր Հեթումի ուղղելով խօսքը կ'ըսէ. Զաղթամարն օրհնել երբէք (ԿԱԼ. 439), առանց ուրիշ բացատրութիւն մը աւելցնելու։ Այս խօսքերը հիմ եղած են կարծելու թէ Անաւարզեցին Աղթամարի աթոռին վրայէն վերցուց այն բանադրանքը որ Սսու-Լերան ժողովով դրուած էր (§ 929), և հրաման տուաւ անոր որ անարգել իր իշխանութիւնը վարէ, ու թողում զեր եղոյց յոյժմանէ — նոյն ամօթ (ԶԱՄ. Գ. 289), մինչ այս մասին ուէ պատմական յիշատակ չկայ։ Ցիշատակարանի մը մէջ այս միջոցին իբր Աղթամարայ կաթողիկոս կը նշանակուին իրարու ետևէն Սէֆէտին իշխանի երկու որդիքը, Ստեփաննոս և Զաքարիա (ԱՐԾ. 363), մինչ Հաւաքարանը Ստեփաննոսէ ետքը կը դնէ Եղիշէ Ագրակեցին 1292'էն 1300, և անկէ ետքը Զաքարիա Սէֆէտինեանը 1300'էն մինչև 1334 (ՕՕ ԲԻԶ. 1193). իսկ Ցիշատակարանը Զաքարիայի մահը կը դնէ 1321'ին (ԱՐԾ. 365)։ Բայց ով ալ ըլլայ Անաւարզեցիին ժամանակակից Աղթամարցին, հնար պիտի չըլլայ բոլորովին հերքել Անաւարզեցիին վերագրուած արձակումն ու օրհնութիւնը, բայց և ոչ անուական արդիւնք մը տալ անոր։ Թուականէս իբր 40—50 տարի ետքը, Մխիթար կաթողիկոս կը գրէ, թէ Աղթամարի աթոռը՝ յառաջնում անուանեալ էր կաթողիկոսին, այլ առանց ժամանակ է, զի եւ անձն անուն կաթողիկոսի. վասնորոյ բանադրեցաւ ի կաթողիկոսէն Հայոց, և թէ յորմհետէ արքեպիսկոպոսն Աղթամարայ ապստամբեցաւ ի մէնջ, բանադրեցաւ հանդերձ վիճակակցօք նորա (ԶԱՄ. Գ. 396)։ Քանի որ Մխիթարէն առաջ ժամանակ տասը տեղի ունեցաւ Աղթամարի դէմ նոր բանադրանք մը, հնար չէ զայն նոյնացնել մօտ 200 տարի առաջ 1114'ի վճռին հետ, և պէտք է ըսել թէ Անաւարզեցիի արձակումէն ետքը, նորէն խնդիր յուզուեցաւ և Անաւարզեցիի արձակումը չեղեալ նկատուեցաւ։ Բայց թէ Գրիգորի և Մխիթարի միջանկեալ երեք կաթողիկոսներէն ով եղաւ բանադրանքը նորոգողը, պատմութիւնը մեզի չյայտներ։ Եղելութիւնը վաղանցուկ և անհետեւանք բան մը եղած ըլլալուն, հարկ չենք սեպեր աւելի հեռու տանիլ մեր հետազօտութիւնները, թէ ինչ պարագաներու մէջ և ինչ պայմաններու ներքեւ տեղի ունեցան Սիսի և Աղթամարի աթոռներուն հաշտարար յարաբերութիւնները Անաւարզեցիի օրով, և կրկին հակառակութիւնները Անաւարզեցիէ ետքը։

**1204**. Անաւարզեցին կը խոստովանի, որ երբ առաջին անգամ Լատիններուն կողմէն իրեն առաջարկուեցաւ՝ իբր նմանողութեան

ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

նախընծայ պայման, պատարագի բաժակին ջուր խառնել, ինքն անմիջապէս չհաւանեցաւ. զի կը գրէ, երբ Թադէոսեան եղբարցն զայս ասէին, ես հայրապետ կեցայ, զի գերեալ աթոռակալ, որ չէր ճիշտ (ԿԱԼ. 438)։ Անկէ կը հետեւի թէ որչափ ալ ոկրասով պատրաստ ըստ ամենայնի Հռոմի ծէսերն ու սովորութիւններն ընդունիլ, սակայն խոհական խղճահարութիւն մը ունեցած է յախուռն չյառաջելու, և պատշաճ կերպով զինուելու իր միտքը խաղաղեցնելու համար։ Իր կողմէն յայտնուած

պատրաստակամութիւնը քաջալերած է Լատին կրօնաւորները իրենց դպրոցական ձեւերով եւ արտաքնոյ պատճառաբանութիւններով գրաւել անոր միտքը, որ արդէն Արեւմտեայց գիտական առաւելութիւններէն նախապաշարեալ էր։ Պատարագի բաժակին ջուր խառնելը՝ հայադաւանութեան դէմ պայքարին գլխաւոր մեկնակէտը եղած է, որովհետեւ Անաւարզեցին մեզի հասած դաւանաբանական գրութեանց, ոչ թէ միայն մեծագոյն պարունակութիւնը, այլ գրեթէ ամբողջութիւնը այդ խնդիրին շուրջը կը դառնայ, եւ յարմար անյարմար վկայութիւններ կուտակուած են ջրախառն բաժակը պաշտպանելու համար։ Եթէ յառաջ բերուած վկայութեանց մէջ Աթանասի եւ Բարսեղի, Ոսկեբերանի եւ Աստուածաբանի անուններն ալ կան, որոնք կրնան Հայերուն ծանօթ ենթադրուիլ, սակայն Աղեքսանդր Ա եւ Յուլիոս Ա պապերէն, Կիպրիանոս Կարքեդոնացիէ եւ Ամբրոսիոս Մեդիոլանեցիէ (ԿԱԼ. 436), Հերոնիմոս Դալմատացիէ եւ Բեդաս Անգղիացիէ (ԿԱԼ. 444) քաղուած վկայութիւններ, զորս Անաւարզեցին ջրախառն բաժակի պաշտպանութեան համար կը յիշէ, յայտնապէս կը ցուցնեն թէ որոնք եղան Անաւարզեցիին խորհրդատուները ու համոզողները. որ մինչեւ իսկ իբրեւ գերագոյն փաստ կը դիմէ յամենայն Ֆռանկ ազգէ հայրոն, որ ի հարկին յառաջ բերել եւ ցուցնէ չհամոզուողներուն (ԿԱԼ. 444)։ Անաւարզեցիին մեծ խիղճ եղած է որ Լատին եկեղեցւոյ մէջ նզովք կայ եղեր բաժակի ջուր չխառնողներուն վրայ։ Ես, կ'ըսէ, ոչ գիտեմ թէ ժողովօք և հայրապետօք մեծ քանոնադրած է, եւ բոլոր ջանքն այն է, որ այդ բանադրանքէն զինքն ազատէ, եւ իբրեւ ապահովութիւն, արդէն առանձնեալ եմ, կ'ըսէ, որ երբ պատարագ չեմ առնեմ, նա՝, ջուր դնեմ ի ծածուկ (ԿԱԼ. 438)։ Որով կ'արդարացնէ իրեն տրուած Ջրոյ մականունը։ Բայց շատ զօրաւոր հաշուոյ տէր չհանդիսանար, երբոր ծածուկէն բաժակը ջրելով, ինքզինքը կը կարծէ պաշտպանել, իսկ իր եկեղեցւոյն պաշտօնեաներուն կը ներէ որ անջուր պատարագեն, եւ համարձակ կը գրէ, ով ոք առնէ, և որ չառնէ, թող կենայ անուն ի ժողով (ԿԱԼ. 448), քանի որ պէտք չէր որ անտարբեր մնար, եթէ իրօք համոզում գոյացուցած էր, թէ բանադրանքի ներքեւ կը մնայ չընողը։

**1205.** Ջրախառն բաժակի խնդիրին մասին համոզում գոյացնելէ ետքը, դիւրին էր ուրիշ լատինական նմանութիւններն ալ ընդունիլ տալ Անաւարզեցիին, որ կը սկսի ձեռք առնել ուրիշ կէտերն ալ, զորս կ'ուզէ լատինին նմանցնել, եւ Հայ եկեղեցւոյ աւանդական կարգերը ջնջել։ Իր փափաքած փոփոխութիւններն են. 1. Ընդունիլ Յոյներէ եւ Լատիններէ ընդունուած եօթը ժողովները, բայց չյիշեր իսկ Լատիններուն ընդունած ուրիշ եօթը ժողովները, որոնցմով Արեւմտեայց տիեզերական ժողովները 14'ի հասած էին։ 2. Համարձակ դաւանիլ երկու բնութիւն, երկու կամք եւ երկու ներգործութիւն ի Քրիստոս, մնալով թէ Հայոց կաթողիկոս մըն ալ եւ Աղուանից կաթողիկոս մըն ալ զայն ընդունած են, բայց անուն չտար, եւ յայտնի չէ թէ որոնց կ'ակնարկէ։ 3. Ծնունդը դեկտեմբեր 25'ին տօնել Յայտնութենէ զատելով։ 4. Զատկի ճրագալոյցին երեկոյին կաթնեղէնով նաւակատիք չընել։ 5. Յինանց ուրբաթներուն պահքը չլուծել։ 6. Բոլոր տէրունի եւ սրբոց տօները եւ պահոց օրերը Լատիններուն հետ ընել, եւ Հայկական եկեղեցւոյ եօթնեկական դրութիւնը ջնջել։ 6. Սուրբ Աստուած'ին մէջէն կամ խաչեցար բառը վերցնել, կամ Քրիստոս բառը աւելցնել։ 8. Եկեղեցական զգեստները գործածել, թէպէտ չաւելցներ որ Լատիններու ձեւերն ալ ընդունելու է։ 9. Ժամերգութիւնները եկեղեցւոյ մէջ կատարել։ 10. Քահանայական տարիքները Լատինաց համեմատ առնել։ 11. Պատկերները ընդունիլ Լատինաց պէս, անխափ եւ առանց օրհնութեան։ 12. Բաժակին ջուր խառնել, ինչ որ արդէն գլխաւոր խնդիրն էր (ԿԱԼ. 439)։ Այդ կէտերը զննած ատեննիս, կը տեսնենք անոնց մէջ քանիներ, որոնք առջի դարերէն Յոյներու կողմէ իբր միաբանութեան պայմաններ առաջարկուած էին, բայց երբեք պաշտօնապէս ընդունուած չէին։ Սակայն Անաւարզեցիին յիշած գլուխները նոր կէտեր ալ կը պարունակէին, հետեւելով անշուշտ Լատին կրօնաւորներուն թելադրութեանց, որոնց կը հպատակէր կրօ-

ՋԱՆԱԶԱՆ ԿԷՏԵՐ

*նուար թաղուողը, և որոնց աշակերտած էր օտարամէտ կաթողիկոսը։ Եթէ կոյին կէտեր որոնք սկիզբէն իվեր դաւանական կամ կարեւոր տարբերութիւններ պարունակե-լուն՝ ուրիշ եկեղեցիներէ առնն առնն պա-հանջուած էին, սակայն Անաւարզեցիին օտարամէտ եռանդը այնչափով ալ չէր բա-ւականանար, և բոլորովին նոր փոփոխու-թիւններ ալ կ'առաջարկէր, որք թերեւս պահանջուած ալ չէին, ինչպէս է տօներու-մասին եօթնեկական դրութեան ջնջումը, Ծրագալոյցի կամ Ցինանց ուտելիքները, և ուրիշներ ալ։*

**1206**. *Անաւարզեցին նորութեանց տեն-դով տոչորեալ անձ մը կ'երեւի, վասն զի փափաք ունեցած է եկե-ղեցւոյ մէջ փոփոխու-թիւններ մտցնել, նաեւ անկախաբար լատինական նմանողութիւններէ։ Այդ կարգէն է սաս-տկական ժամերգութեան մէջ Մեծացուսցէ կարգը հանապազօրեայ ընել, ամբողջա-պէս իր փոխով ու շարականով, քարո-զով և աղօթքով։ Ժամերգութեան այդ մա-սը որ Քրիստոսի Մարդեղութեան կամ Ցայտ-նութեան նուիրեալ էր, հայկական հին ծէ-սին համեմատ, կիրակնօրեայ պաշտօն մըն էր և Ցարութեան նուիրեալ իւղաբերից կա-նոնին մաս կը կազմէր։* (ՕՁՆ. 29)։ *Անա-ւարզեցին, անշուշտ Լատիններէ թելադ-րուելով, թէ Հայոց ժամերգութեան մէջ Աստուածածնայ պաշտաման բաւական մը-տադրութիւն դարձուած չէ, որոշեց որ Մե-ծացուսցէ կարգը, Ցարութեան կանոնէն զատ-ուելով հանապազօր կատարուի սաստ-կական ժամերգութեան մէջ։ Այդ նպատակով բազմաթիւ Մեծացուսցէ շարականներ ալ յօ-րինեց, իւրաքանչիւր օրուան պատշաճին համար, որոնցմէ քանիներ գրչագիրներու մէջ կը տեսնուին, սակայն հաստատուն կի-րառութեան մտած չեն, թէպէտ և Մեծա-ցուսցէ կարգին ամենօրեայ ըլլալը սովորա-կան դարձած է, և այսօր ալ կը կատարուի։ Անաւարզեցին իր Երգեցող մականունն ալ արդարացուցած է նոր շարականներ յօրի-նելով, որոնցմէ 33 կանոն ցուցակագրուած կը գտնենք* (ՍԻՍ. 242)։ *Անոնցմէ 9 հատը Աստուածայայտնութեան տօնին կը պատ-կանին, որուն ինն օրերը բաժնուած է երկու Ծրագալոյցներու, երկու նաւակատիքներու և Թըլ-փատութեան տօնի մը։ Երեք կանոններ գրած է Աւագ շաբաթի առջի երեք օրերուն հա-մար։ Ցատուկ կանոններ յօրինած է, Անդ-րէաս ու Թովմաս առաքեալներու, Մատ-թէոս ու Մարկոս ու Ղուկաս աւետարա-նիչներու, 72 աշակերտներու, Նիկողայոս, Բարսեղ, Աստուածարան ու Ոսկերերան հայրապետներու, Գէորգ, Մերկուրիոս, Թէո-դորոս ու միւս Թէոդորոս զօրավարներու, և կանոն մըն ալ Տորդասեան մարտիրոս-ներու՝ որք Անարզաբայի յատուկ սուրբեր են։ Ըստ այսմ Աստուածայայտնութեան 9 կանոններէն զատ 18 ալ կանոններ յօրինած է Հայ եկեղեցւոյ ընդունուած տօներուն, թէ-պէտ անոնցմէ ոմանք արդէն իրենց շարա-կանները ունեցած են։ Մնացեալ 6 կանոննե-րուն տօներն իսկ նոր են եղած, և իր կողմէն մուծուած, որք են, Երրորդութիւն, Անարատ Ցղութիւն և Ընծայումն Աստուա-ծածնի, Ամենայն Սրբոց, Եօթներորդ ժո-ղով որ է Նիկիոյ Բ, և Լեւոն պապ։ Իր գրած շարականները հաւանաբար յիշուած-ներէն աւելի ալ եղած պիտի ըլլան, զի 33 կանոնները միմիայն ցուցակագրողին ձեռքը հասած գրչագիրներուն մէջ տեսնուածներն են։ Անաւարզեցիին գրական արժէքը շատ չբարձրանար այս շարականներով, որոնց մէջ իր պաշտպաններն ալ կը պարտաւորուին խոստովանիլ թէ չէ՛ վերծական ոճ Նախնի շարա-կանաց* (ՍԻՍ. 242)։ *Անոր գրած շարականնե-րէն և ոչ մէկը գործածական է այժմ, և խափանմանը պատճառ եղած է անշուշտ Տաթեւացին, որ ընդունելի շարականներու ցուցակը կազմելէն ետքը, աւելցուցած է. Այսքան շարականս ընդունելի է յեկեղեցի, և ասել տան զայս խորհեալ է և անդէպքն*(ՏԱԹ. 638)։ *Հարկաւ Տաթեւացին չէր կրնար ներել որ Անաւարզեցիին գրածները կիրառութեան անցնէին։ Շարակնոցին հետ Ցայսմաւուր-քին վրայ ալ յատուկ աշխատութիւն ունե-ցած է Անաւարզեցին, նորանոր յիշատակներ աւելցնելով անոր մէջ, և անշուշտ անկէ մտցուած պիտի ըլլան Ցայսմաւուրքի մէջ ան-ցած Լատին սուրբերու յիշատակները, զոր օրինակ Ամբրոսիոս Միլանեցի* (ՑԱՍ. Բ. 275), *Գրիգոր Հռոմայեցի* (ՑԱՍ. Ա. 117),

**ՇԱՐԱԿԱՆՆԵՐ ԵՒ ՏՕՆԵՐ**

Դորոթէոս Տիւրացի (ՅԱՍ. Ա. 243), Եօթնաբերդ ձորով (ՅԱՍ. Բ. 165), Լաւրենտիոս և Բաբասոս Համայեցիք (ՅԱՍ. Բ. 72) և ուրիշներ։ Յայսմաւուրքը պէտք էր յատուկ առարկայ ըլլար Անաւարզեցիի մտադրութեան, որովհետև կ'աշխատէր ջնջել տօներու մասին Հայ եկեղեցւոյ եօթնեկական դրութիւնը, և սրբոց տօները կատարել ամսաթիւի դրութեամբ և Յայսմաւուրքի կարգով։

**1207**. Անաւարզեցիի լատինասէր ծրագիրին մասին պէտք եղած տեղեկութիւնները տալէն ետքը, հարկ կ'ըլլայ յիշել անոր իրականացման մասին իր ճիգերը։ Ինչպէս կանխեցինք ըսել (§ 1204), նա առաջին անգամ կը սկսէր ինքը գործադրել իր միտքը, չսպասելով ալ որ նախապէս իր ծրագիրը կանոնաւորապէս քննուի ու ընդունուի և ժողովական որոշմամբ հաստատուի։ Միևնոյն ժամանակ հրաման կու տար, որ ով որ ուզէ իրեն նմանիլ, ազատ ըլլայ հնաւանդ ծէսը զանց ընել, և նոր ոճը գործադրել, և համարձակ կը գրէր, Հրաման կոչ տամք եւ կոչեմք որ ձեր այսինքն Հեթումի երիցանցն ջուր խառնեն ի նոյն սուրբ խորհուրդն, և միանգամայն կը թելադրէր, որ ուրիշներ ալ անոնց հետևին, այսինքն Նոյնպէս արասցեն և Թագաւորի երիցանցն, և ձեր եղբարցն, և իշխանացն (ԿԱԼ. 439)։ Այդ գործադրութիւնները պիտի սկսէին որևէ պաշտօնական որոշումէ առաջ, փոփոխութիւնները անզգալաբար կատարելու խորհրդով վիճակի վերածելու դիտմամբ, յօգուտ գործածելով ակնածութեան, շահադիտութեան և շողոքորթութեան անտեղի միջոցները։ Այդ կերպերը կը գործածէր նա Կիլիկիոյ մէջ, իսկ անկէ դուրս, Հայաստանի վիճակներուն համար, յատուկ պատգամաւորութիւններ զրկելու ձևն էր նախընտրած։ Այս պատգամաւորութիւններէն մէկը կը յիշէ Ստեփանոս Օրբելեան, որ իր օրէն էր եղած (ՕՐԲ. Բ. 196), իսկ ուրիշ երեք պատգամաւորութիւններ ալ Անաւարզեցիին նամակին մէջ կը յիշուին (ԿԱԼ. 441)։ Առաջինը զրկած է Բջնեցուն և Վարագեցւոց, այսինքն է Այրարատի և Վասպուրականի վարդապետներուն, որոնց հաճոյակատարութեան վրայ ունի վստահութիւն ունեցած պիտի ըլլայ։ Միւս տարին գրուած է տէր Յովհաննէսի Աստեղց եպիսկոպոսի և երրորդը գրուած է Ստեփանոսի յաջորդը, Յովհաննէս Օրբելեն, որ է Սիւնեաց արքեպիսկոպոս, որպէս հօրեղբայր իշխան [illegible], նոյնպէս և մարդասէր, և իւր ընկերացն։ Անաւարզեցին կ'ուզէ հաւատցնել թէ ցուցաւ [illegible] և հաստատեցաւ (ԿԱԼ. 441) իբր այն թէ զանազան գիրքերէն իրեն հաւաքած, կամ լաւ ևս Լատին կրօնաւորներէն իրեն ցոյց տրուած վկայութիւնները, նոյն իսկ բնագիր կամ թարգմանուած գիրքերու վրայ իր պատուիրակներուն ձեռքով պատրաստուած և իր խօսքը հաստատած ըլլայ։ Սակայն ուրիշ կողմէ մեր ձեռք հասած տեղեկութիւններ, և գլխաւորապէս Օրբելեանի պատմութիւնը, կը վկայեն թէ բնաւ ազդեցութիւն չեն ունեցած իր ճիգերը, և ընդհակառակն բուռն ընդդիմութիւն շարժած են Արևելեայց կողմէն։ Անաւարզեցիին զրկած պատգամաւորներուն թուականները ճշդել դիւրին չէ։ Օրբելեան Ստեփանոսի զրկուածը 1297'էն առաջ պէտք է դնել, զի այն տարին փակած է Օրբելեան իր պատմութիւնը (ՕՐԲ. Բ. 257)։ Հեթումին գրած նամակին մէջ կ'ըսէ, թէ Օրբելի յղածը [illegible] էր, Յովհաննէսի [illegible], և Բրջնեցին (ԿԱԼ. 441), բայց խնդիր է Հեթումին գրուած նամակին թուականը ճշդել, որ նշանակուած չէ։ Ոմանք զայն 1306'ին կը դնեն (ՍԻՍ. 557). մինչ ուրիշներ մինչև 1294 կը տանին (ՉԱՄ. Ե. 291), սակայն հաշիւ առնելով Անաւարզեցիին 1293'ին կաթողիկոսանալը, և նամակէն 3 տարի առաջ վերջին պատգամաւորներուն յղուած ըլլալը, յարմար կ'ըլլայ գնել մինչև 1304 յետաձգել Անաւարզեցիէն Հեթումին գրուած նամակը։

ԳՈՐԾԱԴՐԵԼՈՒ ՋԱՆՔԵՐ

**1208**. Այս անգ Անաւարզեցիի ճիգերուն և յարաբերութիւններուն շարունակութիւնը չսպառած, պէտք է անցնիլ տեղեկութիւններ տալ Կիլիկիոյ քաղաքական գործերուն, և արքունիքին ներքին կացութեան վրայ, ժամանակին պայմանները պարզած ըլլալու համար։ Հեթում արքունիքէն հեռացած էր 1294'ին, պետական հոգերը յանձնելով Թո-

ԿԻԼԻԿԻՈՅ ԱՐՔՈՒՆԻՔԸ

րաս եղբօրը, և ինքն ալ առանձնացած էր Փռանկիսկեանց վանքը, բայց անկէ ալ և կրօնաւորական սքեմովն ալ կը հսկէր երկրին գործերուն, և միշտ ուղղիչն էր Թորոսի քաղաքական ձեռնարկներուն, և Անաւարզեցիին եկեղեցական ծրագիրներուն (§ 1201)։ Բայց Հեթումի այդ ընթացքը ամենուն հաճոյ չէր, իր ազգականներէն և արքունի իշխաններէն ալ շատեր լաւ աչքով չէին դիտեր քրձազգեաց թագաւորը՝ որ ստորադասութեան մոլեռանդ հետեւող մըն էր, և կրօնաւորութիւն ու կառավարութիւն իրարու կը խառնէր։ Մինչեւ իսկ անկէ ազատելու համար դաւաճանութեան խորհուրդ մըն ալ կազմուեցաւ, որուն գլուխը գտնուած են Հեթում և Օշին, Յովհաննէս Իպլինոսի և Հեթում Ա'ի Մարիամ քրոջ որդիներ (ՍԻՍ· 194)։ Դաւաճանութիւնը ճընշուած է, բայց Հեթում պարտաւորուած է նորէն վանքէն ելլալ, և պաշտօնապէս գործի գլուխ անցնիլ։ Նոյն միջոցին Իկոնիոնի սուլտանութեան՝ Թաթարներու ձեռքով կործանուելուն առթիւ՝ Հեթում կը ստիպուի Ղազան խանի մօտ ալ երթալ, յարաբերութիւնները ամրապնդելու համար, և 1295 հոկտեմբեր 19'ին անոր մօտէն մեկնելով յաջողութեամբ Կիլիկիա կը դառնայ (ՍԻՍ· 556)։ Սակայն Թորոս ալ, Հեթումէ ոչ նուազ հեռու էր պետական գործերէ, մանաւանդ իր կնոջ Մարգարիտ Լուսինեանի մեռնելուն վրայ, ուստի համաձայնութեամբ թագաւորութեան խնամակալութիւնը կը յանձնեն իրենց երրորդ եղբօր Սմբատի, և միասին ճանապարհութեան կը ձեռնարկեն դէպի Կոստանդնուպոլիս 1296'ին ամառնամիջի առենները, նպատակ ունենալով ի քոյրն իւրեանց Ռիթայն ի տես երթալ (ՍՄԲ· 126), բայց և միանգամայն Լատիններու և Յոյներու հետ միութենական ձգտումները մշակելու համար։ Հեթումի հեռանալը քաջալերութիւն կը ներշնչէ թագաւորութեան անկերպարան վիճակէն դժգոհներուն, որոնց փափաքելի էր արքունական փառաւորութիւններ ունենալ, և իրենք ալ փառաւորուիլ։ Սմբատ ալ ատրեր էր իր եղբայրներուն տիրաժակէն, ուստի համամիտ գտնուեցաւ, Հեթումն ու Թորոսը բոլորովին ձեռնթափ ընելով, յաջորդութեան իրաւունք սեփականելու, և խորհրդով կաթողիկոսին և իշխանացն, որոշուեցաւ որ թագաւորական օծման արարողութիւնն ալ կատարուի (ՍԱՄ· 154)։ Հանդէսին համար նշանակուեցաւ 1299 յունուար 6, Աստուածայայտնութեան տօնին օրը. և ժողովեցան թագաւորորդիքն և թագաւորազունքն և իշխանքն և աշխարհաժողով բազմութիւն, և օրհնեցաւ ի կաթողիկոսն Հայոց տէր Գրիգոր՝ ամենայն եպիսկոպոսօք և համագումար ժողովով և բոլոր ուխտիւ եկեղեցւոյն, և օծաւ որդոյ Լեւոն թագաւորին մերոյ Գրիգորէ, և տապանաձայն աւետարանաւն, յետոյ ի վերայ երեւոյ սանդղեաց նմա զաւրէնսն և զծառա թագաւորութեան (ՍԻՍ· 225)։ Դիտելու արժանի է Այջին յիշատակութիւնը, որ անոր գերութենէ դարձած ըլլալը կը հաստատէ (§ 1198)։

**1209**. Զարմացման արժանի է Անաւարզեցիի ընթացքը Հեթումի հանդէպ, որուն հետ այնչափ սերտակցութեամբ կապուած էր, և որուն պաշտպանութեամբ իր լատինամոլ ծրագիրին

КАТОЛИКОС ԵՒ ԹԱԳԱՒՈՐ

գործադրութեան կ'աշխատէր։ Հեթում բացարձակ հրաժարականով թագաւորութենէ չէր քաշուած, և Սմբատին յաջորդութեան իրաւունք չէր տուած, որպէսզի Հայ թագաւորութեան և Հայ եկեղեցւոյն վրայ ազդեցութիւն բանեցնելէ զրկուած ըլլար, և Սմբատը պարզ խնամակալ նշանակած էր, ինչպէս երբեմն եղած էր Թորոսը (§ 1201)։ Ասոր հակառակ Գրիգոր՝ իր խորհրդով կը քաջալերէ Սմբատը, որ թագաւորութիւնը իւրացընէ, և գլուխ կը կանգնի Հեթումէ դժգոհ մնացող խումբին և Սիսի Ս. Սոփիա հայրապետանիստ տաճարին մէջ մեծաշուք շքեղութեամբ Սմբատը թագաւոր կ'օծէ, երբ Հեթում և Թորոս բնաւ մը տեղեկութիւն չունէին։ Պէտք է ուրեմն հետեւցնել թէ Սմբատ Հեթումէ աւելի վստահութիւն ներշնչած է Անաւարզեցիին վրայ, թէ պիտի օժանդակէ անոր ծրագիրներուն. և Անաւարզեցին ալ իրեն աւելի նպաստաւոր տեսած է պսակեալ և օծեալ և ազգէն հովանաւորեալ թագաւորի մը օժանդակութիւնը, քան կրօնաւորութեամբը իշխանութիւնը լքանող, և իշխանութեամբը կրօնաւորութիւնը խանգարող թագաւորի մը գործակցութիւնը։ Այս մեր տեսութեան հաստատութիւնը կը գտնենք հարկաւ՝ Անաւար-

զեցիին Սմբատի գրած «չերմական խնդրոց» թուղթին մէջ (ՍԻՍ. 556), ինչ պատճէնը ունենայինք։ Սմբատ առիթ առնելով Եգիպտացիներուն Ասորիքի մէջ նոր յաղթութիւններէն, ողջոյնի ու դիմումներ կ'ընէ Վանիփակիոս Ը պապին, այն որ ճարտար միջնորդութիւններով կրցեր էր առաջնել Կելեստինոս Ե անապատական պապը (§ 1186), և զայն հրաժարելու ստիպելով, ինքն գրաւել պապական աթոռը 1294 դեկտեմբեր 24ին։ Միեւնոյն առթիւ կը գրէր Անգղիոյ Եդուարդ Ա թագաւորին, և այս կերպերով կ'ուզէր իր իշխանութիւնը ճանչցնել տալ Եւրոպիոյ իշխանաւորներուն։ Կաթողիկոսի և թագաւորի համաձայնութեան և լատինական ընթացքին իբրև նշան պիտի յիշենք Սմբատ իշխանի մը ամուսնութեան պարագան, որուն Ստեփանոս կաթողիկոս ներած էր երրորդ աստիճանի ազգականին հետ պսակուիլ (§ 1190)։ Այս Սմբատ, որ Մամեստիոյ գաւառին Բոթա կամ Բոլղա բերդին իշխան կոչուած է (ԿԱԼ. 412), և ուրիշ կողմէ մեզի ծանօթ չէ, շուրջ 10 տարի առաջ պսակուած և զաւակներու ալ տէր եղած էր, այլ Գրիգոր ու Սմբատ իրեն կը համոզեն, թէ Հայոց կաթողիկոսը չէր կրնար այդ ամուսնութեան արտօնութիւնը տալ, թէ իր պսակը ոչինչ է, թէ ինքն ապօրէն կենակցութեան մէջ կը գտնուի, թէ զաւակները պոռնկորդիներ են, և թէ պէտք է պապին դիմէ որպէս զի անոր իշխանութեամբ օրինաւոր ամուսնութեան արտօնութիւն առնայ։ Խեղճ Սմբատ իշխան կը պարտաւորուի այդ դիմումն ընել, քանի որ իր ազգին կրկին իշխանաւորներն ալ չէին ուզեր իր օրինաւոր պսակը ճանչնալ։

**1210.** Հեթում ու Թորոս հօրմէ թէ Սմբատի թագաւոր օծուիլը կը լսեն. կը փութան Կիլիկիա դառնալ, բայց «Սմբատայ եղբօրըջեալ, ու եհող զնոսա ի տանն իւրեանց հայրենի», ուստի պատուիրեցան նորէն Կիլիկիայէ հեռանալ, ու «գնացին առ կայսրն» Անդրոնիկոս Բ Պալէոլոգ, և խնամիէն օգնութիւն խնդրեցին։ Սմբատ օգտուելով անոնց հեռանալէն, և զինեց ի Թորոսն, այսինքն Ղազան խանին, «[illegible] [illegible]», որ Հայոց հետ առնուած բարեկամութիւնը իր վրայ դարձնէ,

ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ

և մինչև իսկ «ի Ղանէ ողջէն», կամ ըստ այլոց «ի Ղանէ ողջոյնոց» կին մըն ալ առաւ։ Երբոր Սմբատ Ղազանէ կը դառնար, ու «ի սահմանս Կեսարիոյ» հասած էր, «հանդիպեցան նմա եղբարքն իւր» Հեթում ու Թորոս, որոնք Անդրոնիկոսէ «առեալ զնա [illegible]» Ղազան խանին կը դիմէին, որուն Հեթում նախածանօթ էր արդէն։ Սմբատ թագաւորական հետեւորդներով կու գար, ուստի եղբայրներուն դէմ ելաւ բռնութեամբ, և «կալեալ զնոսա, և տարեալ եդ ի բանդի ի Բարձրբերդ»։ Բայց ձերբակալելով ու բանտարկելով ալ զինքն ապահով չզգալ, ու «յետ աւուրց [illegible], խորհրդով Ներսէսի իշխանաց, եհան զերկոսեան զեղբարսն իւր զԹորոս, և եհան զաչս Հեթմոյն» (ՍԱՄ. 154), և փակեց զայն Բարձրբերդի մօտ Մոլեւոնի բերդը (ՍՄԲ 127)։ Սմբատի եղբայրասպանութեան թուականը կը ցուցուի 1288 յուլիս 23 օրը (ՍԻՍ. 596)։ Այդ եղելութեան մէջ մեր գըլխաւոր դիտելիքը Անաւարզեցիին դայթ ի գայթ ընթացքն է, որ եթէ ոչ խորհրդակցութեամբ, գոնէ անտարբեր լռութեամբ կը քաջալերէ Սմբատի անօրէն գործերը։ Սմբատ թագաւորութիւնը յափշտակած առնն «խորհրդով կաթողիկոսին և իշխանաց» գործած էր, և միեւնոյն գործին շարունակութիւնն էր եղբայրներուն դէմ բռնութիւնն ալ, որ թէպէտ լոկ «խորհրդով իշխանաց» կատարուած կ'ըսուի, և կաթողիկոսին անունը նորէն չյարուիր, բայց և ոչ դէմ գրած կամ բողոքած ըլլալը կը յիշուի, մանաւանդ թէ կը շարունակէ Սմբատի թագաւորութիւնը հաւանաւորել։ Վանիփակիոս պապն ալ շատ հոգածու չերեւիր կատարուած գործողութեանց մասին, գոհանալով անշուշտ որ իրեն անձնուէր մէկ մը ըլլայ Հայոց գահին վրայ, ով ալ ըլլայ գահակալը։ Ըստ այսմ 1298 հոկտեմբեր 5 թուականով, նամակ մը կը գրէ առ Սմբատ, «առ սիրելի որդի մեր ի Քրիստոս», գոհունակութիւն յայտնելով անոր, թէ «որդիս հնազանդութեան որդի՝ սիրոյ և պատուոյ ցուցեր մեծ յաղթող եկեղեցւոյ Հռոմայ» (ԿԱԼ. 421), իսկ խնդրուած օգնութեան մասին կը բաւականանայ յորդորել, որ «ապաւինեսցի համբերելով հովանաւորութեանց մինչև եկեսցէ պէտքն ժամանակի օգնութեան» (ԿԱԼ. 422)։ Միեւնոյն ամսուն հոկտեմբեր 26 թուականով կը գրէ Գրիգոր կաթողիկոսին ալ, բնաւ յիշատակութիւն չընելով Սմբատի եղ-

րաս եղբօրը, և ինքն ալ առանձնացած էր Փրանկիսկեանց վանքը, բայց անկէ ալ և կրօնաւորական սքեմովն ալ կը հետևէր երկրին գործերուն, և միշտ ուղղիչն էր Թորոսի քաղաքական ձեռնարկներուն, և Անաւարզեցիին եկեղեցական ծրագիրներուն (§ 1201)։ Բայց Հեթումի այդ ընթացքը ամենուն հաճոյ չէր, իր ազգականներէն և արքունի իշխաններէն ալ շատեր լաւ աչքով չէին դիտեր քրձազգեաց թագաւորը՝ որ ստորասիրութեան մոլեռանդ հետևող մըն էր, և կրօնաւորութիւն ու կուսակրութիւն իրարու կը խառնէր։ Մինչև իսկ անկէ ազատելու համար դաւաճանութեան խորհուրդ մըն ալ կազմուեցաւ, որուն գլուխը գտնուած են Հեթում և Օշին, Յովհաննէս Իպլինոսի և Հեթում Ա.'ի Մարիամ քրոջ որդիներ (ՍԽՍ· 194)։ Դաւաճանութիւնը ճընշուած է, բայց Հեթում պարտաւորուած է նորէն վանքէն ելլալ, և պաշտօնապէս գործի գլուխ անցնիլ։ Նոյն միջոցին Իկոնիոնի սուլտանութեան՝ Թաթարներու ձեռքով կործանուելուն առթիւ՝ Հեթում կը ստիպուի Ղազան խանի մօտ ալ երթալ, յարաբերութիւնները ամրապնդելու համար, և 1295 հոկտեմբեր 19'ին անոր մօտէն մեկնելով յաջողութեամբ Կիլիկիա կը դառնայ (ՍԽՍ· 556)։ Սակայն Թորոս ալ, Հեթումէ ոչ նուազ հեռու էր պետական գործերէ, մանաւանդ իր կնոջ Մարգարիտ Լուսինեանի մեռնելուն վրայ, ուստի համաձայնութեամբ թագաւորութեան խնամակալութիւնը կը յանձնեն իրենց երրորդ եղբօր Սմբատի, և միասին ճանապարհութեան կը ձեռնարկեն դէպի Կոստանդնուպոլիս 1296'ին ամառնամիջի առենները, նպատակ ունենալով ի տալն քուերանց Ռիթայն ի փես երթալ (ՍՄԲ· 126), բայց և միանգամայն Լատիններու և Յոյներու հետ միութենական ձգտումները մշակելու համար։ Հեթումի հեռանալը քաջալերութիւն կը ներշնչէ թագաւորութեան անկերպարան վիճակէն դժգոհներուն, որոնց փափաքելի էր արքունական փառաւորութիւններ տեսնել, և իրենք ալ փառաւորուիլ։ Սմբատ ալ ատոնցմէ էր իր եղբայրներուն ախորժակէն, ուստի համամիտ գտնուեցաւ, Հեթումին ու Թորոսը բոլորովին ձեռնթափ նկատելով, յաջորդութեան իրաւունք սեփականել, և խորհրդով կաթողիկոսին և իշխանաց, որոշուեցաւ որ թագաւորական օծման արարողութիւնն ալ կատարուի (ՍԱՄ· 154)։ Հանդէսին համար նշանակուեցաւ 1299 յունուար 6, Աստուածայայտնութեան տօնին օրը. և ժողովեցան թագաւորորդիքն և թագաւորազունքն և իշխանքն և ազատախառնազունք բազմութիւն, և սրբազան կաթողիկոսն Հայոց տէր Գրիգոր՝ ամենայն եպիսկոպոսօք և համագումար ժողովով և բոլոր ուխտիւ եկեղեցւոյն, և աջով սրբոյ Լուսաւորչին մերոյ Գրիգորի, և աստուածային պատարագաւն, յետոյ է վերայ եղեալ ամենեցուն նմա շնորհեցան և զօրաւոր թագաւորութեան (ՍԽՍ· 225)։ Դիտելու արժանի է Այչին յիշատակութիւնը, որ անոր գերութենէ դարձած ըլլալը կը հաստատէ (§ 1198)։

ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՒ ԹԱԳԱՒՈՐ

**1209**. Զարմացման արժանի է Անաւարզեցիի ընթացքը Հեթումի հանդէպ, որուն հետ այնչափ սրտակցութեամբ կապուած էր, և որուն պաշտպանութեամբ իր լատինամոլ ծրագիրին գործադրութեան կ'աշխատէր։ Հեթում բացարձակ հրաժարականով թագաւորութենէ չէր քաշուած, և Սմբատին յաջորդութեան իրաւունք չէր տուած, որպէսզի Հայ թագաւորութեան և Հայ եկեղեցւոյն վրայ ազդեցութիւն բանեցնելէ զրկուած չըլլար, և Սմբատը պարզ խնամակալ նշանակած էր, ինչպէս երբեմն եղած էր Թորոսը (§ 1201)։ Ասոր հակառակ Գրիգոր՝ իր խորհրդով կը քաջալերէ Սմբատը, որ թագաւորութիւնը իւրացընէ, և գլուխ կը կանգնի Հեթումէ դժգոհ մնացող խումբին և Սիսի Ս. Սոփիա հայրապետանիստ տաճարին մէջ մեծաշուք շքեղութեամբ Սմբատը թագաւոր կ'օծէ, երբ Հեթում և Թորոս բանէ մը տեղեկութիւն չունէին։ Պէտք է ուրեմն հետևցնել թէ Սմբատ Հեթումէ աւելի վստահութիւն ներշնչած է Անաւարզեցիին վրայ, թէ պիտի օժանդակէ անոր ծրագիրներուն. և Անաւարզեցին ալ իրեն աւելի նպաստաւոր տեսած է պսակել և օծել և ազգէն հովանաւորել թագաւորի մը օժանդակութիւնը, քան կրօնաւորութեամբը իշխանութիւնը լքանող, և իշխանութեամբը կրօնաւորութիւնը խանգարող թագաւորի մը գործակցութիւնը։ Այս մեր տեսութեան հաստատութիւնը կը գտնենք հարկաւ՝ Անաւար-

զեցին Սմբատի գրած շնորհական ենտրոց թուղ-թին մէջ (ՍԻՍ. 556), եթէ պատճէնը ունենայինք։ Սմբատ առիթ ունեցաւ Եգիպտացիներուն Ասորիքի մէջ նոր յաղթանակներէն, ուղղակի ալ դիմումներ կ'ընէ Վոնիփակիոս Ը պապին, այն որ ճարտար միջնորդութիւններով կրցեր էր անցնել Կեղեստինոս Ե անապատական պապը (§ 1186), և զայն հրաժարելու ստիպելով ինքն գրաւել պապական աթոռը 1294 դեկտեմբեր 24ին։ Միևնոյն առթիւ կը գրէր Անգղիոյ Եդուարդ Ա թագաւորին, և այս կերպերով կ'ուզէր իր իշխանութիւնը ճանչցնել տալ Եւրոպիոյ իշխանաւորներուն։ Կաթողիկոսի և թագաւորի համաձայնութեան և լատինամոլ ընթացքին իբրև նշան պէտք յիշենք Սմբատ իշխանի մը ամուսնութեան պարագան, որուն Ստեփանոս կաթողիկոս ներած էր երրորդ աստիճանի ազգականին հետ պսակուիլ (§ 1190)։ Այս Սմբատ, որ Մամեստիոյ գաւառին Բօթա կամ Բոյդա բերդին իշխան կոչուած է (ԿԱԼ. 412), և ուրիշ կողմէ մեզի ծանօթ չէ, շուրջ 10 տարի առաջ պսակուած և զաւակներ ալ ունեցած էր, այլ Գրիգոր ու Սմբատ իրեն կը համոզեն, թէ Հայոց կաթողիկոսը չէր կրնար այդ ամուսնութեան արտօնութիւնը տալ, թէ իր պսակը ոչինչ է, թէ ինքն ապօրէն կենակցութեան մէջ կը գտնուի, թէ զաւակները պոռնկորդիներ են, և թէ պէտք է պապին դիմէ որպէս զի անոր իշխանութեամբ օրինաւոր ամուսնութեան արտօնութիւն առնէ։ Խեղճ Սմբատ իշխան կը պարտաւորուի այդ դիմումն ընել, քանի որ իր ազգին կրկին իշխանաւորներն ալ չէին ուզեր իր օրինաւոր պսակը ճանչնալ։

**1210.** Հեթում ու Թորոս հօրը թէ Սմբատի թագաւոր օծուիլը կը լսեն. կը փութան Կիլիկիա դառնալ, բայց Աճառոյ եղեւ շրջեալ, ոչ էրող զնաց ի տանն եղբարց իւրեանց, արով յաջորդութեան նորէն Կիլիկիոյ հեռանալ, ու գնացին առ կայսրն Անդրոնիկոս Բ Պալէոլոգ, և խնամիէն օգնութիւն խնդրելու։ Սմբատ օգտուելով անոնց հեռանալէն, և գնաց ի Թաթարն, այսինքն Ղազան խանին, բազում գանձիւք, որ Հայոց հետ ունեցած բարեկամութիւնը՝ իր վրայ դարձնէ,

ՍՄԲԱՏ ԹԱԳԱՒՈՐ

և մինչև իսկ ի ցեղէ ազգէն, կամ ըստ այլոց ի ցեղէ ազգայնոց կին մըն ալ առաւ։ Երբոր Սմբատ Ղազանէ կը դառնար, ու ի սահմանս Կեսարիոյ հասած էր, հանդիպեցան նմա երկու եղբարքն իւր Հեթում ու Թորոս, որոնք Անդրոնիկոսէ առեալ բազում Ղազան խանին կը դիմէին, որուն Հեթում նախածանօթ էր արդէն։ Սմբատ թագաւորական հետեւորդներով կու գար, ուստի եղբայրներուն դէմ երթալ բռնութեամբ, և կալեալ զնոսա, և տարեալ ի բանտ ի Բարձրբերդ։ Բայց ձերբակալելով ու բանտարկելով ալ զինքն ապահով չզգաց, ու յետ սակաւ աւուրց, խորհրդով նենգաւոր իշխանացն, եսպան զեղբայրն իւր զԹորոս, և եհան զաչս Հեթմոյ (ՍԱՄ. 154), և փակեց զայն Բարձրբերդի մօտ Մոլեւոնի բերդը (ՍՄԲ. 127)։ Սմբատի եղբայրասպանութեան թուականը կը ցուցուի 1288 յուլիս 23 օրը (ՍԻՍ. 596)։ Այդ եղելութեան մէջ մեր գըլխաւոր դիտակէտը Անաւարզեցիին գոյթ ի գոյթ ընթացքն է, որ եթէ ոչ խորհրդակցութեամբ, գոնէ անտարբեր լռութեամբ կը քաջալերէ Սմբատի անօրէն գործերը։ Սմբատ թագաւորութիւնը յափշտակած առեն խորհրդով կաթողիկոսին և իշխանաց գործած էր, և միևնոյն գործին շարունակութիւնն էր եղբայրներուն դէմ բռնութիւնն ալ, որ թէպէտ և խորհրդով իշխանաց կատարուած կ'ըսուի, և կաթողիկոսին անունը նորէն չյիշուիր, բայց և ոչ դէմ դրած կամ բողոքած ըլլալը կը յիշուի, մանաւանդ թէ կը շարունակէ Սմբատի թագաւորութիւնը հովանաւորել։ Վոնիփակիոս պապն ալ շատ հոգածու չերեւիր կատարուած գործողութեանց մասին, գոհանալով անով որ իրեն անձնուէր մէկ մը ըլլայ Հայոց գահին վրայ, ով ալ ըլլայ գահակալը։ Ըստ այսմ 1298 նոյեմբեր 5 թուականով, նամակ մը կը գրէ առ Սմբատ, առ սիրելի որդին մեր ի Քրիստոս, գոհունակութիւն յայտնելով անոր, թէ որդես հնազանդութեան որդի՝ սիրես և պատուես զմայր քո զսուրբ եկեղեցին Հռոմայ (ԿԱԼ. 421), իսկ խնդրուած օգնութեան մասին կը բաւականանայ յորդորել, որ յաջողեսցէ համբերութեամբ հաւատարմութեանց մինչև եկեսցէ պիտանի ժամանակն օգնութեան (ԿԱԼ. 422)։ Միևնոյն առեն նոյեմբեր 26 թուականով կը գրէ Գրիգոր կաթողիկոսին ալ, բնաւ մխիթարութիւն չընելով Սմբատի եղ-

բոլորապատ ձեռնարկին նկատմամբ, և բաւականանալով անոր ալ յորդոր կարդալ, թէ զօրասցի սիրտն քո ի Տէր, համբեր և պահեա զճանապարհս Տեառն, մինչև տեղ և եկեղեցւոյդ և Բագրատունեան Հայոց հասանիցէ ժամանակ օգնութեան (ԿԱԼ. 424)։

**ԱՄՈՒՍՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ ՄԸ**

**1211.** Այս գիրերուն հետ դրկուած է նաև առ Սմբատ ի Բովլոյ և առ Իսաբելա կամ Զապէլ անոր ամուսինը՝ նոյեմբեր 11՛ին գրուած նամակ մը, որով օրինաւոր կը ճանչցուի և կը վաւերացուի անոնց ամուսնութիւնը (§ 1209), բայց այնպիսի խրատ և Հայոց հայրապետութեան համար ստորնացուցիչ խօսքերով, որ հնար չէ նկատողութենէ վրիպեցնել։ Բոնիփակիոս կը համարձակի յայտարարել, թէ սուրբ աթոռս Հռոմայ միայն՝ հաստատեաց զաթոռս այլոց պատրիարքաց և մետրապօլտաց և եպիսկոպոսաց, և կը յաւելու թէ զայս մանաւանդ դաւանեաց ի յետին աւուրս ձեր կաթողիկոսն Գրիգոր։ Սմբատի և Զապէլի ամուսնութեան վրայ խօսելով կը յայտարարէ, թէ թէպէտ ամուսնացեալ էիք հրամանաւ տէր Ստեփանոսի կաթողիկոսին Հայոց, սակայն այն հրաման անարժ եղև, զի տուեալ էր ի նմանէ, որ ոչ ունէր իշխանութիւն պարգևելու զայն այնր։ Ուստի կը յաւելու, թէ նախասացեալ տէր Ստեփանոս, ոչ թէ օրինաւոր հրամայող էր, այլ առաւել խաբող, և ըստ այսմ մասին անկեալ զօրութեան կանոնաց։ Այդ յայտարարութեան իբր կնիք կը դնէ որ Սմբատի և Զապէլի ամուսնութիւնը և զաւակները օրինաւոր համարուին, ի խնդրոյ և յաղաչանաց արքային Հայոց, որ է եղբայրասպան Սմբատը (ԿԱԼ. 412-416)։ Բոնիփակիոս Ը՝ նշանաւոր է պապերուն շարքին մէջ, իր բուռն և անկայուն յախորտանքովը. վերանորոգելով Գրիգոր Է՛ի և Ինովկենտիոս Գ՛ի խիզախ ընթացքները, որոնք ոչ թէ լոկ պատրիարքութեանց, այլ և թագաւորութեանց և կայսրութեանց բացարձակ տէր և տիրապետ կը կարծէին պապութիւնը։ Բոնիփակիոս այդ յաւակնութիւնները կը զօրացնէր հաւատաքննութեան ատեաններով և նզովքներու շանթերով։

**1212.** Սմբատ կը կարծէր որ Թորոս մեռցնելով և Հեթումը կուրցնելով ու բանտարկելով, ինքն ազատօրէն տէր կը մնայ թագաւորական գահին, սակայն իր ակնկալութիւնը չարդարացաւ։ Իրեն դէմ ելաւ Կոստանդին Կապանի իշխան և Լևոն Գ՛ի որդիներուն չորրորդը, կողմնակիցներ գտաւ և ժողովեալ զօրս բազումս Սմբատի վրայ յարձակեցաւ, որ պարտաւորուեցաւ տեղի տալ ու փախչիլ ի Հոռոմս։ Բայց անհնարին եղած է յունական կայսրութեան սահմանները ապաւինիլը, որովհետև քիչ ետքը կրցաւ Կոստանդին զայն ձերբակալել, և կալաւ զՍմբատն եդ ի բանտ ի նմին (ՍԱՄ. 154), այսինքն է, նոյն այն Մոլևոնի բերդին մէջ, ուստից եհան զաւագ եղբայրն իւր Հեթում (ՍՄԲ. 127)։ Այսպէս Լևոն Գ՛ի զաւակներ իրարու դէմ կը մրցէին, և իրարու վրայ կը բռնանային թագաւորական իշխանութեան համար։ Հեթում կոյր կրօնաւորը՝ իշխանութիւնը ձեռք առնելու յարմար չէր, ուստի հրամանաւ նորա ինքն Կոստանդին թագաւորեաց (ՍՄԲ. 127), սակայն թագաւոր օծուելուն յիշատակութիւն չունինք, ուստի աւելի ճիշդ կ'երևի կեցեալ պարոն Կիլիկեայ բացատրութիւնը, որ Կոստանդինի կը տրուի, մինչ Սմբատի թագաւոր անունը տրուած է միշտ (ՍԱՄ. 154)։ Թէպէտ և Սմբատի համար ամ մի թագաւոր եղած կը գրուի (ՍԱՄ. 154), սակայն ժամանակագրութիւնը աւելի երկար տևողութիւն կը պահանջէ, զի 1296՛ին էր իր խնամակալ անուանուիլը, և 1298՛ին սկիզբը թագաւոր օծուիլը (§ 1208), և 1299 տարւոյ սկսելէն կանուխ հնար չէ դնել իր գահընկեցութիւնը, որով գոնէ երկուքուկէս տարի իշխանութիւն վարած պէտք է ըլլանք։ Կոստանդինի իշխանութիւնն ալ ամ մի ըսուած է (ՍԱՄ. 154), մինչ ուրիշ պատմիչ մը միայն ամիսս երից տևողութիւն կը նշանակէ (ՍՄԲ. 127)։ Ամէն առթի մէջ Կոստանդինի ալ գահընկէցութիւնը պէտք է 1299՛ին վերջերը դնել։ Այս կռուակցական ձգտումները, որոնք կը տիրէին այս միջոցին Հայերուն մէջ, և այն գայթակղալից երկպառակութիւնը՝ որով վարակուած էին Լևոն Գ՛ի որդիները, Կոստանդինն ալ հանդարտ չթողուցին իր իշխանութեան մէջ, թէպէտ և որոշ ակնարկ մը չունինք անոր բուն կամ վատ գործերուն կամ կառավարութեանը վրայ։

**ԿՈՍՏԱՆԴԻՆ ՈՒ ՍՄԲԱՏ**

Երկու եղբայրներն ալ, Հեթում և Սմբատ ազդեցիկ և կարող բարեկամներ ունէին հարկաւ՝ որ անգործ չէին, երբ անակնկալ պարագայ մը նոր զարկ տուաւ ձգտումներուն, և այս եղաւ երբ Հեթում վերստին եառ զթագաւորութիւն շնորհօքն Աստուծոյ և օգնականութեամբ (ԿԱԼ. 425)։ Հեթումի կուրութեան բժշկութիւնը անհնար եղած պիտի ըլլար, եթէ բառացի իմանայինք Սմբատին համար եհան զաչս Հեթմին գրուածը (ՍԱՄ. 154), այլ չուտով կը մեկնուի, երբոր գիտենք, որ միայն եւ զլորն Հեթմոյ աչքն խաւարել (ՍՄԲ. 127), որ ժամանակով և խնամքով կրնար բժշկուիլ, մանաւանդ եթէ խարելու գործողութիւնը թեթեւակի կատարուած էր, և Հեթումի բժշկութիւնն ալ քիչ չատ անմնելու չափ բան մըն էր միայն, այն ալ միայն մէկ աչքին վրայ, որուն համար Միականի մակդիր անունը տրուած է Հեթումի (ԴԱՐ. 24)։

1213. Բոլորովին տարօրինակ, և գրեթէ անմեկնելի նկարագիր մը կը ներկայանայ Հեթում Բ, որ ոչ վանական փափաքէն կը հեռանայ, ոչ կրօնաւորական կոչումէն կը հրաժարի, ոչ ալ Փրանկիսկեան սքեմը կը թողու, և միշտ ալ զինուորական և պետական հոգերով կը զբաղի, ոչ զէնքը կը թողու և ոչ ալ արքունի մականը, ոչ թագաւորութենէն ձեռք կը քաշէ, և ոչ կատարելապէս և տիրապէս կը վարէ զայն։ Տարօրինակ է Փրանկիսկեան միաբանութեան և Հռոմէական պապութեան ալ ընթացքը, որոնց սկզբունքին համեմատ՝ կրօնաւորի մը աշխարհի հոգերէն պարտ է քաշուիլ, և ամէն վանականի պարտ է իւր վանական կենցաղը չլքանել։

**ՀԵԹՈՒՄԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ**

Աւոր հակառակ Փրանկիսկեան կրօնաւոր Եղբայր Յովհաննէսր, երբեք Հեթում թագաւոր ըլլալը ձեռքէ չձգեր, և կարծես թէ աչքին կուրութիւնը և Մոլեւոնի բանտարկութիւնը աւելի սրած են իւր թագաւորական ախորժակը, որ հազիւ թէ աչքի տեսութիւնը քիչ մը կը բարւոքի, գլուխ կը կանգնի Կոստանդինի դէմ եղող խմբակին, եղբայրը կը զրկէ իշխանութենէն, և ձեռք կ'առնէ նորէն թագաւորութիւնը առանց սքեմը թողլու։ Իւր ապահովութեան համար Սմբատն ալ, Կոստանդինն ալ եհան յերկրէ իւրմէ (ՍՄԲ. 127), և աքսորեաց յաքսոր առ կայսրն ի Կոստանդնուպօլիս (ՍԱՄ. 154) ընդ հաւատարիմ պահպանութեամբ, ողորմելի ընդ, զի մի դարձցէ վերջին ընդոծն (ԿԱԼ. 425)։ Անաւարզեցին անտարբեր կերպով կը համակերպի այդ ամէն փոփոխութեանց, կարծես թէ ինքն ուրիշ կամք չունի, բայց եթէ քաղաքական իշխանութեան գլուխը իւր ծրագիրին համակրող կամ օժանդակող անձ մը ունենալ, բոլորովին անտարբեր մնալով որ Հեթում ըլլայ այն կամ Թորոս, Սմբատ կամ Կոստանդին։ Հեթում իշխանութիւնը ձեռք առած ատեն, խաղաղութիւնն ալ խանգարուած կը գտնէ արտաքիններէն։ Եգիպտացիք նորէն սկսած էին Ասորիքի մէջ արշաւանքներ ընել, տիրապետութիւննին ընդարձակելու համար, Թաթարներն ալ անոնց դէմ կ'ելլէին, Հայերն ալ կը պարտաւորուէին պատերազմին խառնուիլ, իբր դաշնագիր նիզակակիցներ։ Եղեսիոյ ճակատամարտին մէջ 1299 դեկտեմբեր 25'ին, և Սէլահիէի պատերազմին մէջ 1300 յունուար 9'ին, Հեթում ալ Հայ գունդերով Թաթարներուն կ'օգնէր, և Եգիպտացիները հալածելով մինչեւ Երուսաղէմ կը հասնէր, և առիթէն օգտուելով ուխտ մըն ալ կը կատարէր Քրիստոսի գերեզմանին, և փետրուար 3'ին Երուսաղէմէ կը մեկնէր Կիլիկիա դառնալու, վասն զի Թաթարաց խանն ալ կատարած յաղթութեամբը բաւականացած, ետ կը դառնար իւր երկիրը (ՍԻՍ. 557)։ Եգիպտացիներուն ընկրկելովը և Թաթարներու յաղթութեամբը, Կիլիկիոյ կացութիւնը ապահովուած կրնար ըսուիլ. Իկոնիոնի սուլտանութիւնն ալ քայքայուած էր արդէն, և զայն նորոգելու աշխատող Ալայէտտինը՝ Հեթումի ձեռք կ'իյնար, որ զայն Ղազան խանին կը ղրկէր, և այսպէս այս կողմէն ալ վտանգը փարատած կ'ըլլար (ՍԻՍ. 557)։

1214. Հեթում կրօնաւոր-թագաւորը իւր պարտքը լրացուցած կը կարծէ, ներքին և արտաքին դժուարութեանց վերջ տուած ըլլալով, և կը մտածէ նորէն վանք քաշուիլ, և գոնէ արտաքնապէս պետական գործերէ ձեռք քաշել։

**ԼԵՒՈՆ Դ ԹԱԳԱՒՈՐ**

Արտաքնապէս կ'ըսենք, զի

եթէ տիրապէս անդրադ միալու միտք ունէր, պէտք էր կարող և գործունեայ անձ մը նշանակել պետութեան գլուխը, և բնական կարգով իր եղբայրներէն մէկուն կիյնար արքունական իշխանութիւնը։ Եթէ Սմբատ և Կոստանդին աքսորուած էին, կային տակաւին Ալինախ և Օշին, չուզելով Ներսէսն ալ հաշուի առնել, քանի որ քահանայացած էր արդէն, և թերևս ալ արդէն հիւանդագին։ Հեթում ետ կը թողու իր եղբայրները, և սպանուած Թորոս եղբօր որդին, 12 տարեկան Լևոնը թագաւոր հռչակել կու տայ 1301 տարւոյ սկիզբները, հանդիսական արարողութեամբ և օծմամբ։ Այդ պարագաները կ'ապացուցանեն թէ Հեթում պետական գործերը ձեռքէ հանելու դիտումը չունէր, և վանք քաշուիլն ալ արտաքնապէս կազմակերպուած գործ մըն էր։ Նոյն առիթով մանուկ թագաւորին ամուսնութիւնն ալ կը կատարուի, և Լևոն կը պսակուի հօրաքրոջ կողմէ ազգական Ագնէսի հետ, որ Ամաւրի Լուսինեանի և Զապլունի դուստրն էր (§ 1201), և հազիւ 7 տարեկան կրնար եղած ըլլալ։ Պատմութիւնը չլուսաբաներ, թէ կաթողիկոսն էր արդեօք, որ չորրորդ աստիճանի ազգակիցին և անչափահաս աղջկան հետ պսակուիլը կը ներէր, թէ ոչ պապական արտօնութեան կը դիմէին, Սմբատ Բովդացւոյն բախտակից չըլլալու համար (§ 1211)։ Երբոր այս կերպով Հայ թագաւորազուններուն ներքին երկպառակութիւնները կը հանդարտէին, արտաքին խաղաղութիւնն ալ կ'ապահովուէր, և նոյն իսկ Թաթարներու և Եգիպտացիներու մէջ հաշտութեան բանակցութիւններ կը սկսէին 1301 օգոստոսին (ՍԻՍ. 557), Անաւարզեցին ձեռք կ'առնէր վերստին իր լատինամիտ փոփոխութեանց ծրագիրը, մանաւանդ որ քաղաքական ազդեցութիւնը նորէն ամբողջապէս լատին կրօնաւոր Հեթումի ձեռքն էր անցած։ Այդ տեսութեամբ պէտք է սոյն միջոցին դնել այն վերջին պատգամաւորութիւնները, զորս երեք տարի յաջորդաբար ղրկեց Հայաստան, իր ծրագիրը անոնց ընդունելի ընել տալու համար (§ 1207), և հաւանաբար 1302'էն ետքը կատարուած կ'ըլլան անոնք (ԿԱԼ. 441)։

**ԱՆԱՒԱՐԶԵՑԻՆ ԵՒ ԱՐԵՒԵԼԵԱՅՔ**

**1215**. Նորէն մեր մտադրութիւնը Անաւարզեցիին ծրագիրին վրայ դարձնելով, և այդ մասին տեղի ունեցած եղելութիւնները իրարու մօտեցնելով, նախ պիտի խօսինք այն առաջին պատգամաւորութեան վրայ (§1207), որուն մանրամասնութիւնները Օրբելեան ինքն կու տայ մեզի, և որոնք շատ հետաքրքրական են Անաւարզեցիին ընթացքը լուսաբանելու համար։ Շատոնց էր, կը գրէ Օրբելեան, որ այլընդայլոյ լուրեր կը հասնէին Կիլիկիայէ, և կաթողիկոսին անհարթ արարուածոց բազմաց վրայ կը խօսուէր, թէ ճրագալոյցները յեղ և ի ձուն լուծելու կ'արգիլէր, նաւակատիքները կը խափանէր, հիւանդաց և երախայից ձէթեր կ'օրհնէր, և կ'ուզէր զա զայլս զայլս զամենայն աւանդութիւնս Հռոմայ եկեղեցւոյ ողորդել մուծանել ի մեր եկեղեցի, և ի մերոցն ի բաց հեցել զ. զ.։ Օտար եկեղեցիներու հետ բանակցութեան ալ կը մտնէր, կ'ըսէ, և խոստանայր յանձն առնուլ զոր ինչ և խնդրեսցեն, և յանձնառական միաբանութեան թուղթեր ալ կը գրէր, զոր մեք ևս տեսաք։ Ասոնք կը լսէինք, կը գրէ, սակայն կաթողիկոսը մեզ Արևելից կողմանցս ոչինչ ի վեր բերել ծանուցանէր, և հարցում եղած ատեն կը բաւականանար ըսել, թէ վասն նուաճելոյ ժամանակիս կամէիմ զմիաբանութիւն Հռոմայ ընդ մեզ և զամենայն ազգաց, և իբր խայծ կը ցուցնէր թէ խնդրեմ զաթոռն Անտիոքայ մեզ լինել (ՕՐԲ. Բ. 195)։ Անաւարզեցիին այդ ընթացքը պէտք է պատշաճեցնել իր ընտրութենէն ետքը անցնող առաջին տարիներուն, որոց մէջ իր մտադրութիւնը ծածկած էր Արևելեայներէն, և Հռոմէ ու Հռոմէ չփոթութիւնն ալ դիտմամբ կը մշակէր միտքերը ցրուելու համար։ Բայց երբ իր գործունէութեան աւելի ոյժ և ընդարձակութիւն տալու ձեռնարկեց, գործին խակութիւնը սկսաւ մէջ տեղ ելլել, այնպէս որ յեկեղեցւոյ հօր դաւանադաւան մոլորեցն երևեալ լինէր ի տեղիս տեղիս։ Օրբելեան կ'աւելցնէ, թէ սմանէ եղև ի մերոյ աշխարհիս հաճելով հաւանեցան, և սկսան եղբերեւ ընդխնին մեզ, և առնել նորաձևութիւնս և այլաձևութիւնս (ՕՐԲ. Բ. 196)։ Օրբելեանի սիրտը կը սկսի բորբոքիլ, որպէս զի ախոյեան կանգնի ընդդէմ կալ հոգեւոր մարդոյն։ Հանապազ, կը գրէ, ոչ-

ցաւ և ընդդարձոց մնելով, հոգւով մոլեալ ծխական խորհրդովք, սակայն չէր համարձակեր նախայարձակ ըլլալ, և Հայաստանի ու Կիլիկիոյ Հայութեանց մէջ հակառակութիւն գրգռել։ Ժամանակը փափուկ էր, Հայութիւնը պառակտեալ, և ազգային կեանքին վերջին ապաւէնն եղող Կիլիկիոյ թագաւորութիւնն ալ վտանգի ենթարկուած, որուն դէմ նոր դժուարութիւններ հանել, կրնար վտանգը սաստկացնել։ Երանի՛ էր, կ՚ըսէ, եթէ յառաջագոյն մեր ղօրինաց ղօրն է պատերազմ ընդ եկեղեցւոյ, և յորդորեցանէ մերձ խաղաղութեան է մեզ մեր, և ընդդարձակեալ կործանէ զմնացեալ ծագուած ազգիս (ՕՐԲ. Բ. 196)։ Խոհական ազգասիրութեան արդիւնք էին Օրբելեանի այդ զգացումները, որ իւր եկեղեցասիրութեան բորբոքն ալ կը զսպէր, որպէս զի չըլլայ թէ կործանէ զմնացեալ ծագուած ազգիս, այսինքն, Տաւրոսի վրայ ամփոփուած փոքրիկ թագաւորութիւնը, որ Թաթարաց և Եգիպտացւոց, Յունաց և Լատինաց ձեռք խաղալիք դարձած էր, չկարենալով իսկ որոշ և յստակ քաղաքականութեան հետեւիլ։

**1216.** Երբոր Օրբելեան այս ընդդիմամարտ մտածմունքներով կը յուզուէր, և ահա Սիւնիք կը հասնի, Անաւարզեցիէն ղրկուած պատգամաւորը, որուն անունն ալ յայտնի է, Կոստանդին եպիսկոպոս Կեսարու (ՕՐԲ. Բ. 196)։ Այս պատգամաւորութեան թուականը ի դէպ է դնել 1297'ին ատեններ երբոր Սմբատ տիրապետած էր պետութեան, և համեմատաբար հանդարտ կացութիւն մը կը տիրէր։ Իսկ պատգամաւորութեան նպատակին չանցած, պատգամաւորին անձին վրայ պէտք է դարձնենք մեր մտադրութիւնը, որովհետեւ ընդարձակ գործունէութեան գլուխ պիտի տեսնենք այսուհետեւ Կոստանդին Կեսարացին։ Սա բոլորովին նոր անձ մըն է, որ հրապարակի վրայ կը սկսի երեւիլ, և որ բստ ամենայնի համամիտ և համաձայն Անաւարզեցիի նպատակին, անոր աջ բազուկը կը դառնայ լատինամիտ ծրագիրը գործադրելու համար։ Ըստ այսմ անհաւանական չլինիր կարծել, թէ միեւնոյն Կոստանդին Կեսարացին չարունակած է ներքին գաւառները տարուէ տարի պատգամաւորական ուղեւորութիւն կատարելու պաշտօնը։ Իրեն այդ դիրքը ու այդ գործունէութիւնը նոր փաստ մըն է մեզի, հերքելու Անեցւոյն շարունակողէն ծագում առած թիւրիմացութիւնը, որ Կատուկեցի գահընկէց կաթողիկոսը նախացուցած է Կեսարիոյ եպիսկոպոսին հետ (ՍԱՄ. 152), թերեւս անոնց համանուն ըլլալէն խաբուելով։ Կատուկեցին կանուխէն Խորին վանքի վանահայրն էր, և բանտարկութենէն ետքը Սկեւռայ վանքի առաջնորդն եղաւ (§ 1199), և Կեսարիոյ եպիսկոպոս բնաւ չեղաւ։ Արդէն ալ Կատուկեցին երկրատարդ մը չէր կաթողիկոս ընտրուած ատեն 1286'ին, Հեթումի և Անաւարզեցիի վստահութիւնը չվայելելուն համար գահընկէց եղաւ 1289'ին, չորս տարի բանտարկութենէ ետքը՝ իբրեւ շնորհք մը Սկեւռայ վանքին առաջնորդութիւնը ստացաւ 1293'ին։ Տարիքը առած, նեղութիւն քաշած ու տկարացած անձ մը, որ եկեղեցական և քաղաքական իշխանաւորներուն վստահութիւնն ալ չէր գրաւեր, երբեք չպիտի կարենար աշխատալի պատգամաւորութիւն մը կատարել, նմանապէս անվստահութեան պատճառով գահընկէց եղողին՝ չպիտի կարենար յանձնուիլ Անաւարզեցիին ծրագիրին պաշտպանն ու տարածողը ըլլալ։ Աւելցնենք ևս, որ Կատուկեցին Օրբելեանի անծանօթ մէկը չէր, իւր ձեռնադրողն էր եղած, որուն գահընկէցութիւնը մեղադրած էր, և գահընկէց կաթողիկոսին հանդէպ միշտ սէր ու պատկառանք պահած էր։ Եթէ նոյն Կատուկեցին ըլլար, որ իբր Անաւարզեցիի պատգամաւոր Օրբելեանին կը ներկայանար, նա չպիտի կարենար չճանչնալ, և առանց դիտողութեան ու առանց ակնարկի՝ Կոստանդին եպիսկոպոս Կեսարու անունով զայն յիշել, մինչ Օրբելեան առանց բառ մը կամ բացատրութիւն մը աւելցնելու Կոստանդինի անունը կու տայ, և ոչ ալ կը մեղադրէ իւր հոգեւոր ծնողը, եթէ իրեն դէմ զինուած կու գար, զինքն իւր միտքէն ետ դարձնելու։ Կարծենք թէ ուրիշ պատճառաբանութեան պէտք չմնար այլեւս, վճռապէս ընդունելու թէ Կոստանդին Կատուկեցի և Կոստանդին Կեսարացի, տարբեր անձնաւորութիւններ են, և զանոնք շփոթելը պարզ թիւրիմացութիւն մըն է։

*Զարմանալի ալ է՝ թէ ինչպէս նոր պատմագիրներ առանց մտադրութեան ընդգրկած են անանունի մը շփոթութենէ ծագում առած թիւրիմացութիւնը։*

**1217.** *Հարկաւ Կեսարացին ձեռքը պաշտօնական ծրագիր մըն ալ ունէր՝ որով պիտի ներկայանար Սիւնեաց եպիսկոպոսներուն, և պարունակուած առաջարկները բերանացի պիտի պաշտպանէր։*

ՍԻՒՆԵՑՈՑ ԽՈՐՀՈՒՐԴԸ

*Հնար չէր որ Անաւարզեցին իւր հաւաքած վկայութիւնները* (§ 1204), *և կարծեցեալ փաստերը, որոնց այնչափ կարևորութիւն կու տար, պաշտօնական գրութեամբ մը չհաղորդէր Արևելեայց։ Այսու հանդերձ ոչ գիրի մը պատճէնն ունինք, և ոչ իսկ Օրբելեան գրուածի մը յիշատակութիւնը կ՚ընէ, թէպէտ զանազան խնդիրներ հետզհետէ առջևը կը բերէ, գրութենէ մը քաղելու ձևով։ Օրբելեան պէտք սեպեց խորհրդակցութեան գումարել ներկայ և մերձաւոր կարևոր անձերը, որպէս զի ոչ իւր կողմէն անհատապէս, այլ խորհրդով եպիսկոպոսաց աշխարհիս և իշխանաց պատասխանուած ըլլայ կաթողիկոսին։ Հաւաքուած անձանց և ժողովական գործոց որոշ յիշատակներ չեն պատմուած, միայն կաթողիկոսին ուղղուած նամակին ներքևը քանի մը ստորագրողներու անունները ունինք, որոնք եթէ ոչ ժողովականաց ամբողջութիւնը, գոնէ գլխաւորները եղած են։ Ասոնք են.* 1. *Ինքն Ստեփանոս Օրբելեան՝ Սիւնեաց մետրապոլիտը,* 2. *Տէր Սարգիս և* 3. *Տէր Գրիգոր ի նոյն վիճակէ, որք պէտք է Տաթևի եպիսկոպոսներ եղած ըլլան,* 4. *Տէր Յովհաննէս առաջնորդ Բղենոյ,* 5. *Գրիգոր Բղնեցի, հրամանատար այսմ աթոռոյ, որ կ՚երևի Բղնոյ ուսուցիչ վարդապետն էր,* 6. *Տէր Յովհաննէս եպիսկոպոս Հաւուց թառոյ,* 7. *Տէր Մխիթար Հաղարծնոյ եպիսկոպոս,* 8. *Տէր Մարգարէ՝ եպիսկոպոս Վանական վարդապետին,* 9. *Տէր Սարկաւագ՝ եպիսկոպոս Գողթան,* 10. *Եսայի բանաւոր վարժապետ, որ է նոյն ինքն Նչեցին,* 11. *Դաւիթ վարդապետ Հայաստանեայց եկեղեցւոյ, որ իբր Այրարատցի կը մեկնուի։ Այս տասնևմէկ եկեղեցականներէն զատ ստորագրեցին նաև չորս մեծ իշխաններ, Ելիկում Օրբելեան՝ Տարսայիճի որդին, Լիպարիտ Օրբելեան՝ Իւանէի որդին, և Պապաք ու Խաչի Պռօշեան Հասանի որդիք* (ՕՐԲ. Բ. 208—210)։ *Ամէնքը միաձայն որոշեցին բացարձակապէս մերժել Անաւարզեցիէն առաջարկուած որևէ նորութիւն, անփոփոխ պահել հնաւանդ դաւանութիւնն ու արարողութիւնները, պարտաւպատշաճ կերպով իրենց որոշումը հաղորդել կաթողիկոսին, և Ստեփանոսի յանձնեցին թուղթին պատրաստութիւնը։ Ընդգրկեցին նաև այն տեսութիւնները, զորս Օրբելեան կանխաւ նկատողութեան առած էր, այն է ընդդիմութիւնը չտանիլ մինչև կաթողիկոսը չճանչնալու կամ Կիլիկեցիներէ բաժնուելու կէտը, որպէս զի ազգին մէջ պառակտում չըլլայ, կամ ինչպէս Օրբելեան կը մտածէր, որպէս զի չըլլայ թէ խռովութիւնր ընթացեալ կործանէ զմնացեալ ժողոված ազգիս* (§ 1215)։

**1218.** *Օրբելեանէ ամբողջապէս յառաջ բերուած է օրինակ նամակին* (ՕՐԲ. Բ. 197—215), *որ Անաւարզեցիին յղուեցաւ, և կ՚արժէ զայն վերլուծել իբրև կարևոր գրուած մը։*

ՕՐԲԵԼԵԱՆԻ ՆԱՄԱԿԸ

*Սկիզբը Հայ եկեղեցւոյ փառաւորութեան բարեմաղթանքներ կան, իսկ կաթողիկոսին համար յարգանաց և մեծարանաց բացատրութիւնները մինչև չափազանցութիւն մղուած են, որպէս զի զայն շահին ու չզայրացնեն։ Մեծարանաց ողջոյնը կու տան ծիրանափայլ թագաթոռին, որ է կատարեալ երկրպագութեան ձև, և կաթողիկոսը կը կոչեն գլուխ գանձոյն, աթոռոյն բնակաց, լինել և նորոգ ընտանեացն ի Հայկայ, հայր հանուրց սեռից Հայկազանց, կաթողիկոս տիեզերական՝ ի դրանէ Հոնաց և Լեհնոց, ի ծովէ Կասպից և ի լեռնէ Կովկասու մինչ ի սահմանս Եգիպտոսին և ի ծովն արևմտային* (ՕՐԲ. Բ. 198), *և ուրիշ նմանօրինակ պատուադիր բացատրութիւններ ալ կը կրկնուին նամակին մէջ։ Այդ բացատրութիւններէ ետքը համարձակ կը յայտնեն թէ ամէն կողմ կը լուրի, թէ Հռոմ է մեր կաթողիկոսն, և ընդ նոսա դաշնադրեր, ինչ որ, կը յարէ Օրբելեան, ես ալ ականջովս լսած եմ երբ ձեռնադրութեան համար Կիլիկիա եկած էի, և այս պատճառով թագաւորն ու ժողովը այն ատեն կաթողիկոս ըլլալուն չհաւանեցան* (ՕՐԲ. Բ. 199), *որ է Կատուկեցիին ընտրու-*

թեան պարագայն (§ 1168): Ասոր վրայ երկու տեսակ հայցուածներ կ'առաջարկեն Անաւարզեցիին, զոհ հրաժարական և զոհ յանձնառական, զխոստովանութեան բազմաց բանալոյ և զմտաց տկարաց բժշկելոյ նպատակով: Եւ թէպէտ, կ'ըսեն, ուր է արժան կարգելոյ չհամարձակի մի բառ միայն յեղափոխել պէտք եղած կէտերը, սակայն նորէն զանազան կէտերուն բացատրութեան կը մտնեն: Առաջ կ'անցընեն յանձնառական գլուխը, որ է ամենայնի լեալ զենք ունել զճշմարիտ սահմանս, որք գրուած են ի սուրբ ժողովոցն Հայոց (ՕՐԲ. Բ. 200), և յառաջ կը բերեն տասը ժողովներու անունները, որք են. 1. Շահապիվանի ժողով, կաթողիկոս՝ Յովհան Մանդակունի, Սիւնեաց մետրապոլիտ՝ Անանիա: 2. Նոր Քաղաքի ժողով, կաթողիկոս Բաբգէն, Սիւնեաց մետրապոլիտ Մուշէ: 3. Դւնայ ժողով, կաթողիկոս Ներսէս, Սիւնեաց մետրապոլիտ Պետրոս: 4. Դւնայ ժողով, կաթողիկոս Մովսէս, Սիւնեաց մետրապոլիտ դարձեալ Պետրոս: 5. Դւնայ ժողով, կաթողիկոս Աբրահամ, Սիւնեաց մետրապոլիտ Քրիստափոր: 6. Պարտաւի ժողով, կաթողիկոս Եղիա: 7. Թէոդուպոլսոյ ժողով, կաթողիկոս Եզր, զոր Սիւնիք և այլք յաղթահարեցան ու ընկալան զսահմանն, այլ հայցեն ամբողջ շնորհօքն Աստուծոյ: 8. Մանազկերտի ժողով, կաթողիկոս Յովհան Օձնեցի: 9. Անւոյ ժողով, ուր զՎահան կաթողիկոս որոշեցին նզովիւք, և զՍտեփանոս եդին ի տեղին: 10. Անւոյ ժողով, Զաքարիա սպասալարի օրով: Բոլոր այդ ժողովները յառաջ կը բերուին իբրև Քաղկեդոնի դաւանութեան դէմ փաստեր ու վճիռներ, յորոց ոչ անիմք հնար արեամբ և մահու չափ՝ մասամբ միով շեղել, և այնքան նզովից պարտական լինել, և ի մեր հարանցն մասնակցութենէ հեռանալ (ՕՐԲ. Բ. 204): Օրբելեան ժողովները յիշած ատեն, ընդհանրապէս գրուցուած պարագաներուն համեմատ կը խօսի, որոնց մէջ կը գտնուին իսկականէն և մեր ցուցուցածէն տարբերող մանրամասնութիւններ ալ, ինչպէս է Շահապիվանի ժողովը (§ 228) Մանդակունիին օրով դնելը, և անոր հակաքաղկեդոնիկ որոշում վերագրելը: Մենք պէտք չենք զգար այդ մանրամասնութիւնները զննել, բաւական է որ բազմաթիւ Հայ ժողովներ, քաղկեդոնեան դաւանութիւնը և երկաբնակ վարդապետութիւնը չուզեցին երբեք ընդունիլ, ինչ որ Անաւարզեցին ալ չէր կրնար և չկրցաւ ուրանալ:

ԱՆԸՆԴՈՒՆԵԼԻ ԿԷՏԵՐ

**1219**. Հրաժարական անունով կոչուած են անընդունելի կէտերը, որոնցմէ նախ կը յիշեն պատարագի հացին խմորը և բաժակին ջուրը, զորս օտար կը գտնեն աւետարանէն: Յիսուսի կողէն արիւն և ջուր ելած ըլլալն ալ յիշելով, որ բաժակը ջրողներուն մեծ փաստն էր, զայն երկու կենսաբեր խորհուրդներու վրայ կը մեկնեն, որք են Մկրտութիւն և Հաղորդութիւն, և ոչ բաժակին խառնուրդին վրայ: 2. Պատարագի ատեն եկեղեցին բաց պահելը յիշելով պատշաճ չեն տեսներ ամբոխին էբր ի մարմնաւոր խորհուրդս տանել, կամ թէ զդրաման անփոյթ թողուլ ի կերանս շանց և խոզից, որպէս և մեք ականատես եղեաք: 3. Կը յիշեն նաև զմնացորդն յաւուր և ի տուն պատարագ բաժանել՝ առաջարկ մը, որ է շատ քահանաներու միանգամայն կատարողք լինել պատարագի և օրհնաբանել, մինչ հին ծէսով միայն մէկը կը լինի պատարագիչ, և միւսները կը մնան միայն հաղորդակից: 4. Յանձն չեն առնուր մտանել ի Հռոմ եկեղեցին և փոխակից լինել կամ հաղորդել, որով պարզ մուտքը չըլլար արգիլուածը: 5. Չեն ուզեր ընդ նոսա տօնել զԾնունդ կամ զԱւետիս, այլ տօնել Ծնունդը յունուար 6'ին, և Աւետումը ապրիլ 6'ին, ինչպէս որ ատեն մը կը տօնուէր, և վերջէն ապրիլ 7'ին վրայ հաստատուեցաւ: 6. Կ'ուզեն ճրագալոյցներուն խթել յեղ և ի գինի, և հինգ օր նաւակատիքը պահել անխափան: 7. Թէպէտ առաքելոց ատեն կատարուած կ'ընդունին զձէթ օրհնելն հիւանդաց և մեռելոց, սակայն զայն խորհրդական չեն կարծեր, և ոչ ալ կ'ուզեն քաջալերութիւն տալ, ասելով դրամիկ մախել, և ձէթ օրհնել և արդարանալ: Վերջապէս կ'աւելցնեն թէ թեղեր բան և խորհուրդ չէ առնեմք, այլ չեն ուզեր երկայնել, յայտնելով թէ առկան իմաստնոյք բանականացէ (ՕՐԲ.Բ.204-206): Աւելի կ'իմանանք թէ Կեսարացիին բերած առաջարկներուն մէջ ուրիշ կէտեր ալ կան եղեր, բայց հարկաւ աւելի կարեւոր չէին որ լռութեամբ կ'անցնին: Այդպէս իրենց կարծիքները յայտնելէն ետքը կաթողիկոսն կը

*խնդրեն, որ ընդհանրական թղթով մը այդ ամէն կէտերը որոշակի յայտարարէ, և իրենց յուղարկէ,* «չէ՞ յայնժամ առաւել հաստատութեամբ և հլու հպատակութեամբ հնազանդ լիցուք աստուածածոյն գրոյդ»: *Եւ կը յաւելուն, որ եթէ* «աւելի ինչ կամ պակաս կամ մոռանալ յիշեցէք մեր, զոր ոչ առնեմք ի հարցն, յայնժամ մի՛ ոչխար լինիմք և մի՛ զմեզ ոչխար առնէք, բայց յեր կամաց լիցի ոչխարհդ այդ», *այսինքն Կիլիկիա,* «և զմեզ թողէք ի մեր որոյակ գերութեանս», *այսինքն նախնեաց հեռաւորութեան մէջ,* «և մեք կացցուք ծառայեցուք ակն ունելով ձերէն այցելութեան»: *Վերջին խօսքերնին ալ համարձակօրէն կ'արտասանեն.* «Հաւան եմք մեք ընդ մեր հարցն ի դժոխս իջանել, և ոչ ընդ Հռոմայ յերկինս ելանել»: *Կաթողիկոսին կողմէ իշխանական վճիռ մըն ալ առջեւն առնելու համար՝ կը զեկուցանեն, որ եթէ* «թագաւորական սաստիւ պատժէք զմեզ», *այսինքն, եթէ բռնական միջոցներու կամ եկեղեցական դատապարտութիւններու կը դիմէք,* «մեք պատրաստ եմք ի տանջանս և յաքսորս և ի բանտ, և ի մեռանել ի վերայ սուրբ և առաքելական հարցն աւանդից»: *Այս անսակ բուռն և կծու ընդդիմադրութենէ ետքն ալ, պատշաճից ձեւերը զանց չեն ըներ, և վերջին ողջոյնն ալ կու տան չատուչափ պատուագիր ոճով, ինչպէս սկսած էին.* «Ողջ լեր թագաւորական արքունիքդ ծնողդ իմաստից, և մայրդ ուղղափառութեան, ողջ բերդդ հաստատուն, և անվախ ախոյեանդ սուրբ եկեղեցւոյ Գրիգորեան, կաթողիկէ Հայոց, և Տէրն տերանց հովանասցի տէրական գլխոյդ» (ՕՐԲ. Բ. 207-208): *Միեւնոյն խոհական սկզբունքն է, զոր վերեւ քաղեցինք* (§ 1215), *անձր խնդիրէն դառնալ, անձր պատուասիրել և խնդիրին ընդդիմանալ միենոյն համարձակութեամբ, մանաւանդ թէ բաժանման խրտուիլակը հեռացնել ազգին վտանգաւոր վիճակը չծանրացնելու համար:*

**ՕՐԲԵԼԵԱՆԻ ԸՆԹԱՑՔԸ**

1220. *Նամակը թէպէտ* «խորհրդով եպիսկոպոսաց և իշխանաց» (ՕՐԲ.Բ.196) *որոշուած էր, բայց ուղղակի* «բերանով Ստեփաննոսի Սիւնեաց այցելուի» *գրուած ըլլալուն* (ՕՐԲ. Բ. 198), *միւսները պարզ ստորագրութեամբ չեն գոհացած, այլ քանի մը տողերով իրենց համախոհ և համամիտ ըլլալը յայտնած են, նզովքներ ալ աւելցնելով հակառակը մտածողներուն, թէ* «որք ոչ միաբանին այսմ հայրենաւանդ և հայրապետական հաստատեալ դաւանութեանս, նզովեալ եղիցին» (ՕՐԲ. Բ. 208), *կամ համեմատ ուրիշ ձեւեր: Իշխաններն ալ նզովքը կրկնած են, այլ ոչ իրենց անունով, այլ եկեղեցականներուն բերնով, թէ* «որ ոչ հաւանի նզովեալ և որոշեալ լիցի ի սուրբ հարցն մերոց և յաստուածարեալ եպիսկոպոսաց» (ՕՐԲ. Բ. 210): *Այդ տարբերութիւնը նկատողութեան արժանի է և աշխարհականներուն կրօնական գործերու մասնակցութեան ձեւը կը ճշդէ: Սիւնեցիք իրենց նամակին կցած են երկու հատուածներ, մէկը Գրիգոր Նեոկեսարացիէ և միւսը Աթանաս Աղեքսանդրացիէ, որով* «միաւորեալ մի բնութիւն» *բանաձեւը կը հաստատուի* (ՕՐԲ. Բ. 211—215), *և առավ անուղղակի հերքած կ'ըլլան Անաւարզեցիին ցուցմունքները՝ որ ինչ ինչ վկայութիւններ հաւաքած և իր պատգամաւորին ձեռքով կամ իր գրութեամբ ներկայացնելու հոգ տարած էր: Օրբելեան իրենց գրութիւնը համեստօրէն* «Թուղթ մաղթանաց» *կ'անուանէ, բայց այսու հանդերձ Կոստանդին Կեսարացին* «ոչ կամէր յանձն առնուլ զօրութիւն թղթոյն՝ բամբասելով զպատգամաւորսն ինչ» (ՕՐԲ. Բ. 196), *սակայն վերջնապէս չէ կրցած ընդդիմանալ, ու յակամայս պարտաւորուած է տանիլ զայն Անաւարզեցիին, ինչ որ իր պատգամաւորութեան կատարեալ ձախողումն էր: Ստեփանոս՝ նամակի ձեւով գրութենէն ետքը ճառի ձեւով և* «Հակաճառութիւն ընդդէմ երկաբնակաց» *մակագրով գրուած մըն ալ պատրաստած է հայադաւանութեան հնաւանդ սկզբունքները պաշտպանելու բաւական ամուր կերպով, զոր համադաւան պատմագիրը կը յանդգնի* «[illegible] բանից» *անուանել* (ԶԱՄ.Գ.292): *Սիւնեցւոց այդ ընդդիմութեան յաջորդեցին Կիլիկիոյ ներքին խռովութիւնները* (§ 1212), *և պահ մը ընդմիջեցաւ Անաւարզեցիին գործունէութիւնը, մինչեւ որ նորէն հանդարտութիւն տիրեց Լեւոնի թագաւորելովը 1301'ին, ուսկից ետքը տեղի ունեցած կ'ըլլան վերջին երեք պատգամաւորութիւնները* (§ 1214):

1221. *Այդ միջոցին ասպարէզէն կը պակսի Սիւնեաց քաջ ախոյեանը: Օրբելեանի պատմութեան թէպէտ թուական գրուած է 1299 փրկչական տարին, սակայն*

հետր նշանակուած 746 Հայոց թուականը 1297'ին կը պատշաճի, որ պիտի նախադասուի, քանի որ նոյնը կը հաստատուի Սարկաւագաժիր չրջանին 214 թըւականովն ալ, որ նոյն տեղ նշանակուած է (ՕՐԲ. Բ. 257)։ Անկէ ետքը Օրբելեանի գործունէութենէն յիշատակ չունինք, հարկաւ տարիքն ու յոգնութիւնը զինքը ճնշած էին, թէպէտ 1304'ին կնքած է բազմաշխատ և բազմարդիւն կեանքը։ Իրեն յաջորդած է Յովհաննէս Օրբելեան, Լիպարիտի որդին, զոր ինքն կը պատրաստէր (§ 1188)։

**ՕՐԲԵԼԵԱՆԻ ՄԱՀԸ**

Ձեռնադրութիւնը անշուշտ Անաւարզեցիէն առած է, բայց չենք գիտեր ստուգիւ թէ Ստեփանոսի մահուանէն առաջ կամ ետքը, թէպէտ մեզի հաւանականագոյն կ'երեւի ըսել, թէ Ստեփանոս նախահօր զգուշաւորութեամբ կանխաւ ձեռնադրել տուած է։ Նոյն միջոցներուն մեռած են Ելիկում և Լիպարիտ իշխաններն ալ, և Յովհաննէս իբրեւ Օրբելեանց գլուխը, Սիւնեաց իշխանութիւնն ալ միացուցած է մետրապոլտութեան, և այս է Անաւարզեցիին ըսելը անոր համար, որդեւ հոգեւոր իշխան տեղւոյն, Նոյնպէս և մարմնաւոր (ԿԱԼ. 441)։

1222. Անհնար էր որ Սիւնեցւոց ընդդիմութիւնը չշարունակէր և իւր ազդեցութիւնը չգործէր Ստեփանոսի մահուընէն ետքն ալ, զի նոր պարագամասութիւններն ալ դժուարութեանց կը հանդիպէին, երբ Անաւարզեցին կ'աշխատէր իւր ծրագիրը առջեւ տանիլ։

**ԱՆԱՒԱՐԶԵՑԻԻ ՆԱՄԱԿԸ**

Այդ կացութեան հետեւանքը կը կարծենք մենք այն հաչակաւոր թուղթը, զոր գրեց Անաւարզեցին առ կրօնաւոր Թագաւորն Հեթում, հայր արքային Հայոց Լեւոնի, ինչ որ պէտք է իբր զթագաւորակալթագաւորահայր իմանալ, զի Հեթում կուսակրօն էր, Լեւոն ալ Թորոսի որդին էր։ Այս նամակին սկիզբը կը յիշուի, թէ Հեթում հերձուածի տարին է Սիս եկաւ, և թէ անկէ ետքը Հեթումի դրանէրէցը Ստեփանոս՝ եթէր զղջացեալ թագաւորն Հեթումի, և թէ Անաւարզեցին խնդրեց Հեթումէն թէ ջանայ և օգնէ, որ մինչ կենդանի կամ զերծանիմ ի բանադրանաց (ԿԱԼ. 435)։ Այդ վերջին բացատրութիւնը, մինչ կենդանի կամ, պատճառ եղաւ ոմանց կարծել, թէ Անաւարզեցիին թուղթը, մեռնելու մօտ եղած ատեն գրուած ըլլայ, և իբրեւ կտակ թողուած Հեթումի ձեռք, բայց մենք ընդհակառակն կը կարծենք, թէ աւելի կանուխ գրուած թուղթ մըն է, զործերուն կնճռոտած ատենը, բոլորովին մասնական ոճով, որուն մէկ նշանն ալ է սովորական խօսակցութեան լեզուով գրուած ըլլալը, ոչ իբրեւ պաշտօնական գրութիւն մը, այլ իբր բերնէ բերան խօսակցութիւն մը, ինչ որ շատերէն ժամանակին ռամկօրէն կոչուած է, բայց աւելի ճիշդ կ'ըլլար ժամանակին աշխարհաբար կամ խօսակցութեան լեզուն անուանել։

1223. Գործերուն կնճռոտիլը յիշեցինք, և իրօք ալ Անաւարզեցիին ծրագիրը տակաւ դժուարութեանց կը հանդիպէր։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՒ ԶԱՔԱՐԻԱ**

Յովհաննէս Օրբելեան Անաւարզեցիին ծրագիրին կ'ընդդիմանար, և սաստիկ ոճով գիր մըն ալ ուղղած էր Արտազու արքեպիսկոպոս Զաքարիա Ծործորեցիին, որ Վասպուրականի կողմերը Անաւարզեցիին անսացողներուն կը միտէր։ Մէջ բաց մարմնոյ և հոգւոյ մի էաք, կ'ըսէ. ընդէ՞ր բաժանեցար, և եթէ կ'ըսես թէ ի հոր մարմնաւորեանն հաւանեցար, հապա զմեզ ընդէ՞ր զուրկէր խորհրդանէց (ԶԱՄ. Գ. 305)։ Զաքարիա երկրին կերպով կը ջանար խնդիրին մէջէն ելլել, ոչ հնուանց ծէսերը անարգելով, և ոչ կաթողիկոսին զիմադրել ուզելով, զի արդէն զորդիս եղեւ Հայոց չերի մասանս բաժանել, ըլլալով, Սսոյ և Աղթամարայ և Աղուանից կաթողիկոսութեանց վրայ, չէր ուզեր նորանոր բաժանումներ ալ աւելցնել Սսոյ կաթողիկոսէն բաժնուելով։ Ծործորեցին միջադէպ մըն ալ կը յիշէ, թէ Յովհաննէսին հետ տեսակցութիւն ունեցեր է ի Պարսէ, ի ձեռն մենակ եկեղեցւոյն, ուր ելեալ խորհրդոյ եղեր է Յովհաննէս Օրբելեան. ասկայն կը խոստովանի թէ, պէտք, որ դուք ու ոսկեք կամ հնազանդել կաթողիկոսին, իսկ մեք ու էլեցութ պարտաւորիլ ի նմանէ (ԶԱՄ. Գ. 307)։ Օրբելեան Յովհաննէսի և Ծործորեցի Զաքարիայի թղթակցութիւնները չարունակեցին, Հայ վարդապետներու մէջ ներհակընդդէմ վէճերն ալ շատցան, այնպէս որ Հեթում ինքն ալ վարդապետներու կոմանուած պիտի ըլլայ, որ Անաւար-

*ղեցին հարկ կը սեպէ մասնաւոր թուղթով մը զայն իւր ծրագիրին ուղղութեան համոզել, և իրեն կուսակից մըն ալ ապահոված կարծելով՝ Թագաւորահօր կ'առաջարկէ, որ ազգային ժողով մը գումարէ, և խնդիրները անոր մէջ հաստատուն որոշման յանգին։ Հետեւաբար անհիմն պիտի չըլլայ կարծել, թէ Սամփառոս գրաներէցին Հեթումին բերած նամակները, ճիշդ այդ կէտերը կը շօշափէին, և Հեթում որոշ լուծումներ կը պահանջէր կաթողիկոսէն։ Իսկ Անաւարզեցին ալ իրական գործ կը պահանջէր Հեթումէն, զի նա էր տիրապէս թագաւորութեան վարիչը, և Լեւոն Դ հազիւ 15 տարեկան պատանի մըն էր տակաւին։ Ըստայսմ Հեթումի ուղղուած հռչակաւոր թուղթը՝ հաւանաբար 1303'ին գրուած կրնայ ըլլալ։ Հեթում ու Գրիգոր շատոնց իրարու խորհրդակից ու համամիտ ու գործակից էին, և Հեթում կատարելապէս համոզուած մըն էր Անաւարզեցիին ծրագիրին։ Արդ, եթէ տարիներ ետքը Անաւարզեցին պէտք կը զգայ մասնաւոր նամակով մը Հեթումը համոզելու փաստեր գործածել, անհրաժեշտ է Հեթումի միտքին մէջ վարանում մը ենթադրել, զոր բուժելու կը ստիպուի Անաւարզեցին մասնաւոր, բայց պատճառաբանեալ նամակով մը։*

1224. *Յիշեալ նամակին պարունակութեան գլեթէ ամբողջութիւնը բաժակի ջուրին շուրջը կը դառնայ,*

**ԲԱԺԱԿԻՆ ՋՈՒՐԸ**

*և կ'երեւի թէ աւելի այս կէտն էր որ Հեթումի միտքը վրդոված էր, որ Անաւարզեցին բոլոր իւր ոյժը անոր վրայ կը թափէ, հարեւանցի անցնելով ուրիշ փոփոխութիւնները (ԿԱԼ. 439), զորս արդէն քաղեցինք իւր կարգին (§ 1205)։ Բաժակի ջուրը հաստատելու համար Անաւարզեցին ունէր այն վկայութիւնները, զորս Լատիններ իրեն թելադրած էին, բայց, կ'ըսէ, յորժամ երէկ յեր երեցն, եւ ունէին առօրէ որ ծաղլէն ի Հայ քրոցն զինյոտնութեանս, որոնք չէին հատոտեն և գրեն յեղ (ԿԱԼ. 438)։ Ասկէ կը հետեւի, որ Հեթում բաւական չսեպելով օտարներու վկայութիւնը, Հայ գիրքերէն վկայութիւններ պահանջեր է ընդդիմաբաններու դիմադրելու համար։ Այս նպատակով նախ կը յիշէ Աթանասի հայերէն թարգմանութիւնը, և կ'աւելցնէ շատ մը օտարներու անունները, զորս առիթ ունեցանք քաղելու (§ 1204)։ Սակայն ասոնց վկայութիւնները չէին կրնար մեծ ոյժ ունենալ Հայերու վրայ, վասն զի իւրաքանչիւրը իւր եկեղեցական սովորութիւնը կ'ուզէր լուսաբանել, և ոչ թէ ուրիշ եկեղեցւոյ սովորութեան դէմ գրել։ Անաւարզեցին Հայերէն վկայութիւն ու փաստ քաղելու համար կ'ըսէ, թէ Հայեր ամէն օր ճուրջ մը ջրոյ ի նշխարն խառնեն, և զայն նշխարն ողջ ի գինին դնեն, որով բաժակին ջուր խառնուած ըլլալը կ'ուզէ հետեւցնել (ԿԱԼ. 437)։ Ծիծաղելի՝ չըսենք խղճալի՝ պատճառաբանութիւն մը։ Կը յիշէ նաև թէ գրոյ ի տէր Ներսէս Լամբրոնացին այլ օգնոտանութեան, և ի Կլայեցին այլ (ԿԱԼ. 438), բայց գտածները չյիշեր, միայն աւելի վար կը պատմէ թէ տէր Ներսէս, որ հանդէպեր, հայրապետ, զոր Կալանոս Շնորհալիին վրայ կ'ուզէ իմանալ (ԿԱԼ. 441), սակայն անտարբեր հաղորդուողը Լամբրոնացին էր (§ 1061), որ այս կերպով ոչ թէ ջուր խառնելը պարտաւորիչ կը ցուցնէր, այլ խառնելը կամ չխառնելը անտարբեր կը գտնէր։ Իբրեւ փաստ կ'ուզէ գործածել նաև, որ Կոստանդին Բարձրբերդցիին և Հեթում Ա'ին օրով Անտիոքի Լատին պատրիարքը Սսոյ Ս. Սոփիա Հայ եկեղեցւոյն մէջ պատարագեր է, և հարկաւ ջրախառն բաժակով պատարագած կ'ըլլայ, ուրկէ Կոստանդին ալ հաղորդուեր է։ Սակայն այս ալ ըսել չէ թէ նոյն ջրոյն դստրքեայց հետ էր (ԿԱԼ. 442)։ Հայեր անապակ պատարագած ատեննին, երբեք նոյնը Լատիններէն չպահանջեցին, որ Լատին պատրիարքին պատարագը արգելելու պէտք զգային։ Հայոց անապակ բաժակով պատարագելը կ'ուզէ մեկնել ըսելով, թէ յԱրեւելս զի անդամ կամ խմեն, անդամ դստրքեցէն, ինչպէս որ Յոյներ ալ, որովհետեւ զարեանց գինին ինքնան կամ խմեն, նա զարեանց դստրքեն ինքման կամ առնեն ԿԱԼ. 447), իսկ Հրէայք ջրախառն կը խմեն եղեր, վասնզի Սողոմոն գինիի համար՝ զոր խառնեցէ յեղ ըսեր է, և Յիսուս ալ բաժակն է առեր, և ոչ կորսա կամ փշեր (ԿԱԼ. 445), որոնք անապակ կ'ըլլան։ Առանց ուզելու պնդել, թէ խառնուած գինին պակասամիտներուն համար պատրաստուած է (ԱՌԿ. Թ. 4), դիտել կուտանք միայն, որ Անաւարզեցին*

իւր խօսքով ընդունած կ'ըլլայ թէ իւրաքանչիւր ազգ իւր սովորութեան հետեւելու իրաւունք ունի: Կը յիշէ ևս թէ Աղուանից պատրիարքը, այսինքն Կաղանկայտուացին, գրած ըլլայ, թէ տասը եպիսկոպոսներ Դուինի ժողովուելով մուծեր են ՚ի Քնութին՚ը, Խաչեցար՚ը, յունուար 6՚ի Ծնունդը, և անապակ բաժակը, զորս յետոյ Եզր խափաներ է, և հինգ կաթողիկոսներ անոր հետեւեր են, որոց մէջ նաեւ Սահակ, որ վասն Հայերէն առ Մահմէտ գնաց, և որոյ զնանչելին, մեռնելէն ետքը դրօշեց և կործաց զէտր Նոյզն, և որուն անդրական աջը ինքն ալ տեսեր է Հռոմկլայի մէջ (ԿԱԼ. 442): Թէպէտ կ'ըսէ թէ Եսայի Նչեցիէն այսպէս լսած ըլլայ (ԿԱԼ. 444), սակայն Կաղանկայտուացին սասնկ պատմութիւն չունի, և ոչ ալ այն վեց կաթողիկոսները օտարոտի փոփոխութիւնները ընդգրկած են, և ոչ ալ տասը եպիսկոպոսներու խելքով հաստատուած են հայադաւան և հայածէս կարգադրութիւնները: Այսչափն ալ կը բաւէ իմանալու թէ ինչչափ տկար էին Անաւարզեցիին փաստերը, և ինչու չէր կրնար ընդդիմադիրները համոզել:

**1225.** Սոյն թուղթին մէջէն քանի մը ուրիշ կէտեր ալ կան բացատրելու արժանի: Անաւարզեցին կը գրէ, թէ կոյր է ձեռս էմ թեւոյն Քէրին, որ է Հռոմայ Արքայն (ԿԱԼ. 436), և չյիշեր թէ իւր քեռին ով է: Ոմանք ուզեցին Յակոբ Ա կաթողիկոսն իմանալ (ՀԱՅ. Ա. 119), օգտուելով անշուշտ ուրիշ անգ Յակոբ մը իրեն նախահայր անուանելէն, երբ կը գրէ, թէ եմ լուեալ ի սուրբ Նախահարցն, ի տէր Յակոբայ և ի Դաւիթ վարդապետէն և ի տէր Ներսէսոյն (ԿԱԼ. 441), ուր և ոչ յայտնի է թէ Յակոբը կաթողիկոս մըն է, թէ ոչ իւր նախնիքներէն քահանայ մը, քանի որ ինքն ալ Տուրքերիցանց կը կոչուէր: Աւելի անծանօթ կը մնայ Հռոմայ Արքայ գիրքը, վասնզի հնար չէ որ Մայրագոմեցիին վկայութեանը դիմած ըլլայ (ՀԻՆ. 430): Անաւարզեցին իւր պատճառաբանութեանց կարգը ընդմիջելով կը գրէ Հեթումին, աղաչեմք զքեզ որ ոչ խմանայք, թէ զթանս վասն մեր կամ երկրորդ, այլ վասն այլոց որ տղայ են և տկար (ԿԱԼ. 444), բայց այս քաղաքավարի դարձուածը աւելի ևս կը համոզէ մեզ, թէ իրօք Հեթումի վարանումները փարատելու կ'աշխատէր: Դարձեալ մէջ կը բերէ, որ տանէ զդենն Հայրենի՝ հարցէ զնա ոչ՝ առակը, և կ'ուզէ զինքն պաշտպանել, թէ հայրենաւանդ սովորութիւնները եղծանել չուզեր, այլ երբ թէ ժամանակով մուծուած զեղծումները կ'ուզէ ուղղել (ԿԱԼ. 448): Այդ առթիւ խօսքը առաջ տանելով կը յայտարարէ, թէ ինքն չուզեր բոլոր օտար սովորութիւնները ընդունիլ: Ըստ այսմ բաժակին ջուրը ընդունելով, չուզեր ընդունիլ նաեւ խմորուն հացն ու թերմոնը՝ այսինքն տաք գինին, Յոյներուն հետեւելով: Լատիններէն ալ ընդունելով եպիսկոպոսին խոյրը կամ միթրը և խաչ հանելու կերպը, չուզեր ընդունիլ աղուհացից մէջ ձէթ ու ձուկ ուտելը՝ Աւետման տօնէն զատ, ախալանաց մէջ ինկող քահանային պատարագելը, կամ աշխարհիկ քահանայն ալ անկէն լինելը (ԿԱԼ. 449): Կ'ընդունի ևս զամենայն արքեպիսկոպոսս Հռոմայ եկեղեցւոյն, և զպատրիարքն, որք են Կոստանդնուպոլսոյ, Աղեքսանդրիոյ, Անտիոքի և Երուսաղէմի աթոռները, զՊրեսբիտերն ասորք անուանեն արքեպոսնեայ, որ կոչեն ողջատոս, զոր ի զուր Կալանոս կոչելէն կը թարգմանէ լատիներէնին մէջ, փոխանակ օրինագուտ: Բայց չընդունիր Յակոբ Կարոն զըկոր կոչուածները, այսինքն Յակոբիկ Ասորիները, որ մէկ մատամբ խաչ հանեն, և ուրբաթն աւելածեն, այսինքն ուրբաթ երեկոյէ պահք կը լուծեն: Չընդունիր նաեւ Թլփատուողները, ազգապղծութիւն ընդունողները, աւագ սարկաւագը ամուսնացնողները, Նեստորականները, և կը կնքէ ըսելով. ընդ նոյն անիծեմք զմանեայն հերձուածողսն, և զփառաւորացանեմք ի հերետիկոսութենէ (ԿԱԼ. 450): Իսկ ասոնցմէ դուրս կը հաւանի որ մերն ու մեր հաւացն, որ մինչև ցայժմ եղեալ է (ԿԱԼ. 449): Այդ կէտերը շատ բացատրութեան չեն կարօտիր, միայն նըկատողութեան արժանի է, որ Անաւարզեցին իւր կատարեալ լատինամոլութեամբը չվարանիր յունադաւանները ալ իբրեւ ուղղափառ ընդունիլ, թէպէտ Լատին ու Յոյն եկեղեցիներ իրարմէ բաժնուած էին, ու զիրար կը նզովէին: Եւ կ'երեւի թէ վերջապէս հայադաւան ազատամտութենէն և Հայ եկեղեցւոյ լայնախոհութենէն բան մը մնացեր է

*Անաւարզեցիին միտքին մէջն ալ։ Նոյնը կը քաղուի նաև այն ազատութենէն զոր կ'ընդունի, թէ ով տայ՝ տանէ, և ով շտայ՝ թող կենայ մինչ ի ժողովն, մինչև ժողովով հաստատութեամբ և դրամաշահականութեամբ լինի եղանակ ըստ կանոնաց (ԿԱԼ. 448)։ Այս պատճառով էր որ պաշտօնապէս պառակտումը կը խափանուէր Հայոց մէջ, հակառակ կաթողիկոսին և թագաւորահօր բուռն յամառութեան։*

**1226**. *Անաւարզեցիի հռչակաւոր նամակին պարունակութիւնը իրաւունք կու տայ եզրակացնելու, թէ այն բնաւ հեղինակութիւն կազմող գրուած մը չէ։* **ՆԱՄԱԿԻՆ ՁՕՐՈՒԹԻՒՆԸ** *Մանրամասն ոճէն զատ, որ գրուածը պաշտօնական ոյժ կը զրկէ, ինքն նամակագիրն ալ միայն իր անհատական կարծիքը կը յայտնէ, առանց իսկ յաւակնելու զայն պարտաւորիչ ընել, և գումարուելիք ժողովի մը որոշումին կ'ենթարկէ իր առաջարկին հաստատութիւնը, որով կը խոստովանի թէ առանց ժողովի իր կարծիքը ոյժ չունի։ Արդէն Հայ եկեղեցւոյ ըմբռնումով և սկզբունքով կաթողիկոսի մը անհատական կարծիքը երբեք դաւանական զօրութիւն չունի, և իր անձնական հեղինակութենէն աւելի չարժեր, և երբ Անաւարզեցին կը ճանչնայ թէ իր ըրածը նորութիւն մըն է, նովին իսկ իր խօսքին հեղինակութիւնը ինքն կը ջնջէ։ Թէ ինչ եղաւ այդ թուղթին հետեւանքը՝ գրուած չէ, միայն կը տեսնենք, որ այլեւս այդ թուղթը մէջտեղ չերեւար, վճարանութեան նիւթ չկազմեր, խնդրոյ հիմ չլինիր, և ապագայ Սսոյ ժողովին մէջ ալ բնաւ առ Հեթում գրուած նամակին խօսքը չըլլար, այլ իբրեւ հիմ կ'առնուի, ուրիշ թուղթ մը, զոր Անաւարզեցին առաքեաց առ սուրբ և բարեպաշտ թագաւորն Լեւոն (ԿԱԼ. 457)։ Որչափ ալ Լեւոն տակաւին պատանեկութեան տարիքին մէջ, և գործի տէր ըլլալու անբաւական, որչափ ալ ինքն Հեթում իր վանքէն ալ պետական գործերուն ղեկը վարող, սակայն օրինաւորութեանց ձեւակերպութիւնները յարգելով իմացուցած պիտի ըլլայ Անաւարզեցիին, թէ մանրամասն ոճով և խօսակցութեան լեզուով իրեն ղրկուած նամակը հնար չէ իբր պաշտօնագիր ընդունիլ ուստի պէտք է որ պաշտօնական ձեւով գիր մը ուղղէ անոր՝ որ որչափ ալ տղայ, բայց թագաւորի անունը կը կրէ, և անկէ խնդրէ ժողովի գումարումը, և անոր ներկայէ ժողովական որոշմանց ենթարկուելիք նիւթերուն ծրագիրը։ Այս պատճառով Անաւարզեցին երկրորդ գիր մը ուղղած է Լեւոնի անունին, որչափ ալ ինչպէս ըսինք ու կը կրկնենք, նորէն Հեթում պիտի ըլլար գործը վարողը և պէտք եղածը կարգադրողը։ Այդ երկրորդ գիրը չունինք իր կատարեալ պատճէնովը, սակայն դժուար չէ նկատել, թէ այն միեւնոյն գրութիւնն է, որ իբր Սսոյ ժողովի առեմապրութիւն կամ վճիռ յառաջ բերուած է Կալանոսէ, որ այդ գրութեանց պատճէնները հանած է հնագոյն արձանագրութիւններէ, ինչպէս յատիներէն մասին մէջ կը գրէ (ԿԱԼ. 435)։ Իսկ Լեւոնի ուղղուած գրութեան թուական իդէպ է ընդունիլ դարձեալ 1305 տարին, զի երկրորդ գրուածը առաջինէն շատ եաք մնացած չի կրնար ըլլալ։ Այդ պաշտօնական գրութեան ալ հետեւանքը եղած է ժողովական գումարման մը համար որոշումը, որ ի գլխոյ ժամու պիտի հաւաքուէր, որպէսզի ձեռնարկէ հաստատել յեկեղեցին Հայոց, ինչ որ Անաւարզեցին առաջարկած էր իր պաշտօնական գրութեան մէջ (ԿԱԼ. 456)։ Նկատողութեան արժանի է, որ Անաւարզեցին չհամարձակիր իր կաթողիկոսական իշխանութեամբ հրաւիրել եկեղեցական ժողովը, ինչ որ կանոնական ձեւը կը պահանջէ, այլ առաջ Հեթումի կը դիմէ մանրամասն նամակովը, և յետոյ Լեւոնի կը գրէ պաշտօնական թուղթովը, և թագաւորական իշխանութենէ կը սպասէ եկեղեցական գործերու հոգածութիւնը, ինչպէս են դաւանական և ծիսական խնդիրները։ Անտարակոյս Անաւարզեցին չէր կրնար անգիտանալ իրեն դէմ եղած հակակիր զգացումները եպիսկոպոսութեան մեծ մասին մէջ, և կը խիթար որ չյարգուիր իր հրաւէրը, և կանխիկ դուռ կը բանար խռովութիւններու։ Այս պատճառով կ'ուզէր թագաւորական իշխանութեան հովանաւորութեամբ իր ծրագիրը յառաջացնել։ Եթէ այդ ժողովը յաջողցնես, կը գրէ Հեթումին, դուն Քրիստոսի ես, շինեալ արեամբ ի դժոխոցն կապնեալ (ԿԱԼ. 440)։*

**ԻՆՉԻՆՉ ԴԻՊՈՒԱԾՆԵՐ**

1227. Ժողով գումարելու համար պէտք ժամանակը (ԿԱԼ. 459) դժբախտաբար չկրցաւ ստացուիլ 1305 և 1306 տարիներու մէջ, որք այդ գրութեանց հետեւեցան: Եգիպտացիք թոյլ և դադար չտուին Հայերուն, և շարունակ արշաւանքներով և ասպատակներով Կիլիկիան նեղեցին: Տարի առաջ 1304'ին մեռած էր Թաթարներու Ղազան խանը, և Հեթում պարտք սեպած էր անձամբ ողջունել անոր յաջորդը Ղարբանթա կամ Խօլչապատու խանը, և այդ պատճառով Դավրէժի ուղեւորութիւնը կատարած, քանի որ ուրիշ կողմէն օգնութիւն մը չէին գտներ Եգիպտացւոց դէմ, և Կղեմէս Ե պապ կը գոհանար համբերութեան յորդորներ կարդալով (§ 1210): Անշուշտ նոր խանին այցելութեան պատճառով էր՝ որ Յովհաննէս Օրբելեան և Զաքարիա Ծործորեցին ալ իրարու կը հանդիպէին Դավրէժի մէջ (1223), բայց չենք գիտեր թէ Հեթումի ալ հանդիպեցան այնտեղ: Հեթում դառնալէն ետքն ալ պարտաւորուեցաւ շարունակ դէմ դնել Եգիպտացւոց արշաւանքներուն, որոնք զանազան կողմերէն Կիլիկիա կը յարձակէին և աւերածներ կը գործէին: Թէպէտեւ քանիցս Հայեր կը յաջողէին լեռներէ և կիրճերէ օգտուելով անոնց դիմադրել, և բաւական թուով թշնամիներ ալ կոտորել, բայց արշաւանքները չէին դադարեր: Ինչպէս առէպ յիշած ենք, մեր նպատակէն դուրս կը նկատենք արտաքին դէպքերու և պատերազմներուն մանրամասնութեանց մտնել: Հայեր փութացին Լատիններուն օգնութիւնն ալ խնդրել թախանձանօք, սակայն Կղեմէս Ե պապն ալ, որ Բենեդիկտոս ԺԱ'ի յաջորդ համառօտ գահակալութենէ ետքը աթոռ բարձրացած էր 1305'ին, Կղեմէս Ե'ի ձեւով համբերութեան ու քաջալերութեան յորդորներով կը պատասխանէր 1306 յուլիս 2'ին: Թաթար խաներ, որ Պարսկաստանի տիրապետն էին և Դավրէժ կը նստէին, հետզհետէ իրենց կեդրոնին մէջ կ'ամփոփուէին, և հեռաւոր երկիրներէն ձեռք կը քաշէին, որով այս կողմէն ալ կը պակսէր Հայերու սպասած օգնութիւնը:

**ՕՍՄԱՆԵԱՆՑ ՍԿԻԶԲԸ**

1228. Այս միջոցին էր որ նոր պետութիւն մը, յանկարծական և արագ յաջողութեամբ կը սկսէր ընդարձակուիլ: Թուրքերու նոր գաղթականութիւն մը 1227'ին մեկնած էր Անդրկասպեան երկիրներէն Եփրատի կողմերը հաստատուելու միտքով, և բաւական ժամանակ պտտելէ ետքը տեղաւորուած էր Իկոնիոնի սուլտանութեան սահմաններուն մէջ: Իսկ գաղութին մի մասին ետ դարձած ատեն, միւս մասը մնացած էր նոյն տեղը, և սուլտանութեան մատուցած ծառայութեանց ի վարձ՝ ստացած էր Սէօյիւտի գաւառը շուրջ 1242'ին: Էրթօղրուլ էր այդ ճիւղին պետը, որդի առաջին գաղութին գլուխը եղող Սիւլէյմանի, որ և յաջողեցաւ իր սահմանները հետզհետէ ընդարձակել, գլխաւորապէս Յոյներէն քաղաքներ և բերդեր առնելով, և բաւական զօրաւոր դիրք մը ձգեց իր որդւոյն Օսմանին, երբոր մեռաւ 1288'ին: Օսման աւելի ձեռներէց քան իր հայրը, աւելի ընդարձակեց իր իշխանութիւնը սուլտաններուն հովանաւորութեամբ, այնպէս որ երբ 1294'ին Իկոնիոնի սուլտանութիւնը ջնջուեցաւ Թաթարներու ձեռքով, և շատ մը մանր իշխանութիւններ կազմուեցան (§ 1208), Օսմանի իշխանութիւնը շատերէն աւելի զօրաւոր էր, որով Օսման 1299'ին համարձակեցաւ զինքն սուլտան կամ փատիշահ հռչակել, իբրեւ Իկոնիոնի սուլտանութեան յաջորդ: Անկէ ետքը սկսաւ աւելի մեծ յաջողութեամբ և արագութեամբ իր իշխանութիւնը ընդարձակել, միւս փոքրները հետզհետէ հպատակեցնել և նուաճել, և այս կերպով Կիլիկիոյ Հայոց թագաւորութեան դէմ նոր ոյժ մը կազմել, դէպ հարաւ ալ ուղղելով իր արշաւանքները:

**ԱՆԱՒԱՐԶԵՑԻԻՆ ՄԱՀԸ**

1229. Ահա այն պարագաները, որոնք չներեցին Անաւարզեցիին մեծ փափաքին իրականացումը, զի Հեթում և Լեւոն հակառակ իրենց համակամ պատրաստականութեան, ոչ պատեհը ունեցան և ոչ համարձակութիւն զգացին ազգային ժողով հրաւիրելու: Միւս կողմէն Անաւարզեցին տարիքը առած, յուզմունքներէ և աշխատութիւններէ տկարացած, իր վախճանին մօտենալը կը տեսնէր,

և տարի առաջ արդէն Հեթումի կը գրէր, *թէ մինչ կենդանի կամ, վերծանեմ ի քանոնագրա-նոց* (ԿԱԼ· 435)։ Իսկ մտահոգութիւն պատճառով բանադրանքը՝ բաժակին ջուր չխառնողներուն դէմ Լատին եկեղեցւոյ բանադրանքն էր, որուն համար կը գրէր թէ *ող-ջերթէ, Բե ժողովք և հայրապետաց մեծ քանոնագրած էր* (ԼԱԼ· 438)։ Իրաւ որ Անաւարզեցին իւր գործը փոքրոգի խղճահարութեան հասուցած պիտի ըսուի, եթէ անկեղծ յայտարարութիւններ են գրածները, ինչ որ չենք ուզեր կասկածի ներքեւ թողուլ, որովհետեւ իրեն *երկնային մարմնոյ հոգւոյն* վկայողները չեն պակսիր։ Անոր մարմնոյ առողջութիւնը, կ՚ըսեն, *ջնջեալ էր յողքնից և ի դահոց, ի հոկեաց ծպնաւորէք* (ՍՄԲ· 160), որ բարեպաշտօն անձի գաղափարը կը թելադրէ իւր վրայ։ Ուստի մենք ալ չենք ուզեր կարեւորութիւն ընծայել Ջահկեցիին վերջին դարերու մէջ գրածին, թէ երբ *հայհոյէր զատուքէն սուրբ հայ-րապետ մեր, աթոռէն ինկաւ ու պէտահարեցաւ, և մեռաւ դառն մահուամբ* (ՃԱՀ· 601)։ Ինչ ալ ըլլային Անաւարզեցիին զգացումն ու դիտումը, նա չկրցաւ դայն իրականացած տեսնել, և մահը վրայ հասաւ ու անոր գործունէութիւնը վերջացուց։ Մահուան օրը որոշ չէ, միայն թէ մահուընէ ետքն է որ ժողով կը հրաւիրուի, և 1307 մարտ 19՚ին ժողովը կը գումարուի, և եթէ ամիս մը կամ ամիսուկէս միջոց ուզ՚նք տալ այդ գործողութեանց, 1307 յունուարի վերջերը պէտք է դնել անոր մահը։ Սմբատի և Անեցիի շարունակողներն ալ որոշ թուական չեն ցուցներ, և կը մնայ յիշեալ մակաբերական հաշուով գոհանալ։ Անաւարզեցիին վրայ դիտողութիւններս ու անոր ընթացքին գնահատումը՝ քանիցս առիթ ունեցանք յայտնել եղելութեանց կարգին, և նորէն կրկնել չենք ուզեր։ Կրնանք ըսել թէ նա համոզմամբ համեմատութեան կուսակից մըն էր, և թէ ամէն ճիգ թափեց իւր համոզումը Հայ եկեղեցւոյ մէջ ալ ընդհանրացնել, սակայն պաշտօնապէս համեմատութեան մը չկրցաւ ըլլալ, եւս առաւել Հայ եկեղեցին համեմատութեան չկրցաւ ընել։ Մարդ մը, որ կը յայտարարէ թէ *բաժակին ջուր տնեմ ի ծածուկ* (ԿԱԼ· 438), նովին իսկ վկայած կ՚ըլլայ թէ պաշտօնապէս համեմատութեան ճանչցուելէ խուսափած է։ Եւ նա՝ որ կրկին կրկին կը պնդէ թէ՝ պէտք է սպասել, *մինչև լինէր դի ժողովով հաստատէր* (ԿԱԼ· 438), և *թէ կա-ծածկեմ մինչև ժողով լինի* (ԿԱԼ· 444), կ՚ընդունի թէ պէտք է որ *ժողովով, հաստա-տութեամբ և գրամաքանականութեամբ լինի երաշխա-ւոր կանոնաց* (ԿԱԼ· 448), և այնպիսւոյն համար հնար չէ հաստատել, թէ նա ինքնին հայադաւան եկեղեցին համեմատութեան փոխարկած ըլլայ։ Այսպէսով կ՚ոչնչանան Անաւարզեցիին հեղինակութեամբ Հայերը կաթոլիկ դարձնողներուն ճիգերը, քանի որ Անաւարզեցին ժողով չըրած և ժողովով իւր դիտումը չիրագործած աշխարհէ մեկնեցաւ։

ՍՍՈՅ ԺՈՂՈՎԱԿԱՆՔ

**1230**. Սակայն իւր գործակիցն, գուցէ և թելադրիչն, Հեթում-Յովհաննէս կրօնաւոր-թագաւորահայրը, չուզեց անգործ մնալ, և այն յուզումնալից միջոցին մէջ, երբ մէկ կողմէն քաղաքականապէս երկիրը կը վրդովուէր, և միւս կողմէն աթոռին պարապութեան երեսէն մտահոգութիւն կը տիրէր, ուզեց գործին պաշտօնական կերպարան տալ, և օգուտ քաղել կաթողիկոսական ընտրութեան համար գումարուելիք ժողովէն։ Հրաւէրները ցրուեցան Լեւոն թագաւորի անունով, որ 18 տարեկան եղած ըլլալով և գործի տէր նկատուելով, *դարձեալ համարեցաւ ժողով առնել եպիսկոպոսաց, վարդապետաց և հարց* (ԿԱԼ· 458), սակայն միշտ կը շարունակէր հօրեղբօրը թեւարկութեան և թելադրութեան ներքեւ գործել։ Հարկաւ քառասուն օրի չափ միջոց մը պէտք եղած է, մինչեւ որ կոչնագիրներ ղրկուին և եպիսկոպոսներ ու վարդապետներ հաւաքուին, որչափ ալ *ի-կ և ի-կ ժողովեալ* ըսուած ըլլայ (ԿԱԼ·458)։ Իրաւ եկողներու մէջ հեռաւորներ չկան, և գրեթէ բոլորը Կիլիկիոյ կամ անոր շրջակայից մէջ եղող եպիսկոպոսներ են, սակայն անոնք ալ հարկաւ առենի մը պէտք ունէին։ Ներկաներուն ցուցակին մէջ կը գտնենք միայն 26 եպիսկոպոսներ, որոնցմէ 16՚ը Կիլիկիայէն են. Կոստանդին Սսոյ, Յովհաննէս և Ստեփանոս Տարսոնի, թերեւս մէկը միւսին օգնական, Յովհաննէս Անարզաբայ, Յովհաննէս Այասի, Ստեփանոս Բարձրբերդի, Բասիլիոս կապանի, Գրիգո-

րիոս Մարաշի, Թորոս Մաշկեւորի, Անդրէաս Հարքանի, Սիմէոն Կոպիտառի, Հայրապետ Ոռրանի, և Նիկողայոս Կիպրոսի. երեք ալ կաթողիկոսարանի եպիսկոպոսներ, որոնցմէ Ստեփանոս դրան կաթողիկոսարանի կը կոչուի, Յակոբ քուերորդի կաթողիկոսի կ'ըսուի, իսկ Գէորգ առանց ուրիշ անունի կը յիշուի: Հինգ ալ Կիլիկիոյ շրջակայից մէջ Իկոնիոնի սահմաններէն եկողներ էին, որք են. Կոստանդին Կեսարիոյ, նոյն իսկ Սիւնիք գացող պատուիրակը (§ 1216), Ստեփանոս Սեբաստիոյ, Ներսէս Տիանայի, Վարդան Եւդոկիոյ և Լեւոն Ծամնդաւի, որով 21 եպիսկոպոսներ ամէնն ալ մէկ շրջանակի մարդիկներ են: Անոնցմէ դուրս եղողներն են, Յովհաննէս Մարանդունեաց, Կարապետ Մեծկերտի, Վարդան Անիի, և Փիլիպպոս Խորձեանի: Այս չորսերը Հայաստանի ներկայացուցիչներ պէտք է համարուէին, սակայն Մարանդունի գաւառ չունինք, միայն Մարանդ գիւղ մը կը գիտցուի, իսկ Անիի եպիսկոպոս ըսուածը, եթէ բուն Անիի արքեպիսկոպոսն ըլլար՝ 25'րդ տեղը չէր թողուեր: Իսկ Մեծկերտ և Խորձեան, այժմեան Մազկերտն ու Քղին, Արեւմտեայց կեդրոնէն հեռու տեղեր են, և զուգէ հանդիպմամբ Սիս գտնուած են:

1231. Յիշուած անունները յառաջ բերած առեն Կալանոս լատիներէնին մէջ կը յայտարարէ թէ զայն Եպիսկոպոսաց քաղած է ամենահին օրինակէ և ըստ այսմ

ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ԹԻՒԸ

միայն 26 եպիսկոպոսներու անուններ կը յիշէ իբր ներկայ (ԿԱԼ. 455), և չենք իմանար թէ ինչպէս վերջէն 36 եպիսկոպոսներու ցուցակ մը կու տայ, առանց տարբերութիւնը բացատրելու (ԿԱԼ. 469): Այս երկրորդ ցուցակին մէջ Կիլիկեցիներէ կը պակսին Տարսոնի երկրորդը, և Այասի, Ոռրանի ու Կիպրոսի եպիսկոպոսները; և աւելցուած են Ստեփանոս Աստանայի, Յովհաննէս Բերիոյ, Վարդան Մաշարդի, և Մարտիրոս Ուռթեյի եպիսկոպոսներ: Շրջակայից եպիսկոպոսներէն կը պակսի Ծամնդաւի եպիսկոպոսը, և աւելցած է Ներսէս Նէոկեսարիոյ եպիսկոպոս: Գաղթականութիւններէն կը յիշուի Եսայի Թեսաղոնիկէի եպիսկոպոս մը: Իսկ աւելի մեծ տարբերութիւնը Հայաստանի եպիսկոպոսներուն մէջն է, որոնցմէ կը պակսին Մարանդունեաց և Անիի եպիսկոպոսները, և աւելցուած են 11 նոր անուններ, որք են. Սարգիս Եզնիկի՝ հաւանաբար Երզնկայի, Սահակ Բաբերդի, Տիրատուր Բասենի, Ներսէս Կամախի, Աւետիք Նփրկերտի, Վարդան Սասունի, Սերոբէ Ճապաղջուրի, Գրիգոր Վահանաշէնի, Հայրապետ Զմչկածագի, Կիրակոս Մեծկերտի դաշտին, և Շմաւոն Օծոպի եպիսկոպոսներ: Քանի որ ստոյգ բացատրութիւն չկայ, կրնանք ըսել, թէ պակաս եղողները չհաւանելով մեկնողներ են, իսկ աւելցուածներ՝ վերջէն հաւանելով կամ ձեռնադրուելու գալով ստորագրելու պատաւորուեր են: Սոյն ժողովականներուն կարգին առեղծուածական անձ մը եղած է Յովհաննէս Եպիսկոպոս Սոփենեայ (ԿԱԼ. 459), զոր նորերէն շատեր համարձակօրէն իբր Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոս իմացած են (ՉԱՄ. Գ. 309), սակայն Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոս մը՝ իւր փառաւոր կոչումը աղաւաղ անունի մը չէր փոխեր հարկաւ՝ և Կոստանդնուպոլիսն ալ դեռ Օսմանեան սուլտաններէն գրաւուած չէր, որ Սոփենեայ անունը գործածական ըլլար: Ուստի քանի որ աղաւաղ անունի մը դիմաց կը գտնուինք, և Կոստանդնուպոլսոյ մէջ Հայ եպիսկոպոսական աթոռ մը գտնուելն ալ՝ բնաւ հաւանականութիւն չընծայեր, ոչինչ կ'արգելու ըսել՝ որ Իսաւրիոյ Սելեւկիայի, կամ Փոքր Ասիոյ Սեւաստոպոլի կամ Ստեփանուպոլի, կամ ուրիշ քաղաքի մը անունին չաբաչար աղաւաղումին դիմաց կը գտնուինք:

1232. Եպիսկոպոսներէն զատ վարդապետներու անուններ ալ ունինք ցուցակին մէջ, ամէնն ալ Կիլիկեցի վարդապետներ: Անոնցմէ 10 հատը, պարզապէս իբր Րաբունի կը

ՎԱՐԴԱՊԵՏՔ ԵՒ ԻՇԽԱՆՔ

յիշուին իրենց ուսումնական առաւելութեան համար, ու են. Յովհաննէս Մեծքարեցի, Րաբունի կոչուած իբրեւ Դպրեվանքին ուսուցչապետ, Մարկոս Սկեւռացի, Վարդան Անարզաբացի, Գրիգոր Գերմանիկեցի, Գրիգոր Մեծքարեցի, Թորոս Կրակեցի, Վարդան Ակներցի, և Մարկոս կաթողիկոսարանի վարդապետ, ինչպէս պիտի ըլլան նաեւ

*Գրիգորիս և անապատաւոր Կիրակոս՝ որ առանց տեղի անունի կը յիշուին։ Վարդապետներէն 7 հատն ալ իբրեւ վանաց հայր կը յիշուին իրենց պաշտօնական առաւելութեան համար, բայց միւսներէն յետադաս։ Անոնք են. Սարգիս Ակների, Գրիգոր Թիւրքթիի, Բարսեղ Խորինի, Թորոս Մեծքարի, Կարապետ Մովսիսոնցի, Յովսէփ Քեյեզականի, և Թորոս Զորոյվանքի։ Ասոնցմէ ետքը կարգը կու գայ աշխարհական իշխաններուն, որոնց գլխաւորները միայն կը յիշուին, վերջէն աւելցնելով* այլեւս իշխանք և ազատորդիք Հայոց։ *Անունով յիշուածներն են. Լեւոն թագաւոր, Հեթում թագաւորահայր, Օշին տէր Կապանի, և Ալինախ տէր Լամբրոնի ու Տարսոնի՝ Հեթումի եղբայրներ, Օշին տէր Կանչայ սպարապետ, Սմբատ տէր Ասկուրայ՝ մարաջախտ, Ռեմունդ տէր Միքայէլկուլի՝ սենեշալ, Թորոս Զաւիկ՝ թագաւորին դարպասին գլխաւոր, և Թորոս տէր Ծոփէլկայի՝ պրաքսիմոս։ Այս պալատականներէն զատ ներկայ եղած են Վասակ Բերդէկի, Սմբատ Սմբատակլայի, Օշին Կոպիտառի, Լիկոս Կիտառամի, և Լիկոս Կերաշնեցի բերդակալ իշխանները։ Ամէնէն վերջը կու գայ* բազմութիւն քահանայից և կրօնաւորաց, *որոնց գլուխը յանուանէ կը յիշուի միայն Կոստանդին աւագերէց թագաւորին* (ԿԱԼ. 460)։ *Այս է Սսոյ ժողովին կազմակերպութիւնը։*

**1233**. *Սսոյ ժողովը կը գումարուի Ծաղկազարդի օրը 1307 մարտ 19'ին, Սիսի Ս. Սոփիա եկեղեցւոյն մէջ, և մի՛ և նոյն օրը կը վերջանայ՝ իր գործը, տօնական օր մը ըլլալով մէկտեղ։*

**ՍՍՈՅ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ**

*Այդ հապճեպ գործողութիւնը կ'ապացուցանէ բանուած ձեւը, վասն զի յայտնապէս գրուած է, թէ* առաջի եդեալ է արքային զնամակ կաթողիկոսին, որպէս զի տեսցէ ճշմարտութեամբ, *սակայն քննութիւն եղած չէ, և ըլլալն ալ բռնուած չէ, այլ ժողովականք փութացած են հաստատել, ինչպէս կը յայտարարեն, թէ* զոր ինչս տեսեալ, ծանեաք արդարեւ որպէս առաքելական կանոնադրութիւն և զօրէնս (ԿԱԼ. 461)։ *Սոսկ այդ պարագայն բաւական է ցուցնել թէ, օրինաւոր ժողով մը չէ եղած Սսոյ գումարումը, այլ հանդիսական արարողութիւն մը, ուր թագաւոր մը և թագաւորահայր մը թուղթ մը կը դնեն մէջտեղ, և քանի մը եպիսկոպոսներ ու վարդապետներ առանց գլուխի և առանց կաթողիկոսի, հլու հպատակութեամբ կը ստորագրեն իրենց առջեւը դրուած թուղթը։ Այս հնազանդ հաւանութեան զօրութեամբ կ'որոշուի.* 1. Զերկու բնութիւնս և զկամս և զներգործութիւնս ասել, *պարզապէս այն պատճառով թէ* այսպէս սահմանեաց մեզ երանելին հայրն մեր՝ *Գրիգոր Անաւարզեցին։* 2. Ի տօնախմբութիւնս տէրունական տօնից համաձայնս լինել այլեւս քրիստոնէից, *և յատկապէս* ի յԱւետիսն, ի Ծնունդն, ի Մկրտութիւնն և ի Քառասնօրեայ գալուստն, *որ է ըսել մարտ 25, դեկտեմբեր 25, յունուար 6 և փետրուար 2 օրերը ընդունիլ, ինչպէս նաեւ օգոստոսի 15'ին* զօր Վերափոխման, *և սեպտեմբեր 14'ին* զԽաչվերացն։ *Ասոնցմէ զատ ուրիշ տօներ յիշուած չեն. իսկ փոփոխութեանց փաստ ցուցուած է, թէ* այսպէս ասաց մեզ *նոյն Անաւարզեցին։* 3. Զի ըստ Յայսմաւուրացն տօնեսցուք զտօնս վկայիցն, *որ է Հայ եկեղեցւոյ յատուկ եօթնեկական դրութեան ջնջումը։* 4. Զի քահանայական զգեստն ըստ խորատանչոր առաքինոյ լիցի յեկեղեցին. *որ է եկեղեցական զգեստներու կիրառութիւնը։* 5. Զի ի զգեստս սրբոյ սեղանոյն լիցի կորպորայն անպաճոյճ. *որ է Լատիններուն գործածած քառակուսի ճերմակ կտաւը, զոր սկիհին ներքեւ կը սփռեն, և սրբագործութենէ ետքը նշխարը անոր վրայ կը դնեն, մինչ Հայեր մաղզմային մէջ կը պահեն մինչեւ վերջը։* Կորպորայ (corporale) *լատին բառը* մարմնական *կը թարգմանուի սովորաբար։* 6. *Ծննդեան չաբաթապահքը դեկտեմբեր 19'էն սկսիլ, որ 24'ին ճրագալոյցի օրը վերջանայ։* 7. Ի ճրագալոյցն ձկամբ և ձիթով միայն բաւականանալ, *որ է ըսել կաթնեղէն ու կթեղէն չգործածել։* 8. *Ամէնէն վերջը կը դնեն* զջրէն բանն, զոր հրամայեաց խառնել ի սուրբ խորհուրդն (ԿԱԼ. 461)։ *Այսչափը որոշմանց կարգին. իսկ նախընթաց տեղեկագրութեան մէջ յիշուած է եւս,* 9. Ընդունել զեօթն ժողովսն, և զոր ի նոսա հաստատեցան ի սրբոց հարցն (ԿԱԼ. 456), *և* 10. Սուրբ սրբասացն *այսպէս ասել.* Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, Քրիստոս, որ խաչեցար վասն մեր ողորմեա մեզ (ԿԱԼ. 457)։

**ԺՈՂՈՎԻՆ ՆՊԱՏԱԿԸ**

**1234**. *Վերոյիչեալ որոշումներէն ինչին վրայ բնաւ ընդարձակ բացատրութիւն կամ պաշտպանողական փաստաբանութիւն աւելցած չէ. և իբրև գլխաւոր համոզիչ փաստ, յիշուած է միայն,* որպէս զի ընդ մեծի եկեղեցւոյն Հռոմայ և այլ ուղղափառ եկեղեցեաց Քրիստոսի, և Հայաստանեայց եկեղեցի կացցէ հաղորդութեան աւանդութեամբ և դաւանիւ *(ԿԱԼ· 456)։ Որչափ ալ գլուխը Հռոմի հետ միաբանութիւնն է գրուած, բայց* և այլ ուղղափառ եկեղեցեաց Քրիստոսի *յաւելուածը, որով* ուղղափառ, *և ոչ թէ* կաթոլիկէ *եկեղեցիներ կ'իմացուին՝ հակառակ Կալանոսի թարգմանութեան. բաւական բացայայտ կը ցուցնէ հայադաւան սկզբանց ներողամիտ և թոյլատու զգացումը, որով չէին վարաներ յունադաւան եկեղեցիներու հետ միութիւն ընդունիլ, երբ Հռոմ իբր հերձուածող և հերետիկոս կը նզովէր ուղղափառ եկեղեցիները։ Հայերուն գլխաւոր նպատակն եղած էր և էր տակաւին, եկեղեցական կղզիացումէ հեռանալով, և ուրիշ եկեղեցիներու հետ միաբանելով, անոնցմէ քաղաքական և զինուորական օգնութիւն գտնել. քանի որ ժամանակին մերձաւոր հոգին չէր ներեր արեւմտեան քրիստոնեաներուն որևէ յարաբերութիւն պահել կամ օգնութիւն հասցնել, նոյն իսկ քրիստոնեաներուն, եթէ իրենց հետ դաւանութեամբ և ծէսով համաձայն չէին։ Այդ դիտումն է զոր Հայեր կը մշակէին առաջ Պահլաւունի կաթողիկոսներու և բուն Ռուբինեան իշխաններու ժամանակ, խոհական և զգուշաւոր կերպով. այլ անոնց յաջորդող Պապլեոնեան կամ Կոռիկոսեան իշխաններու և կամակատար կաթողիկոսներու ժամանակ՝ գործը անխորհուրդ և անզգոյշ նախանձայուզութեան հասաւ, մինչև որ Լուսինեան իշխաններու ներքև կէս-պաշտօնական ձևւի մը յանգելու մօտեցաւ։ Իսկ Սսոյ ժողովոյն պաշտօնական որոշմանց մէջ, մինչ բոլոր ուրիշ կէտերը լոկ յիշատակութեամբ կը փակուին, բաժակին ջուր խառնելու կէտը ընդարձակ պատճառաբանութեանց առարկայ եղած է (ԿԱԼ· 461—467), զոր անգամ մըն ալ վերլուծել աւելորդ կը սեպենք, վասնզի միևնոյն վկայութիւններն (§ 1204) և նոյն դիտողութիւններն են (§ 1224), որոնք կը պարունակուէին Հեթումի գրուած մանրամասն թուղթին մէջ, զորս դարձեալ նոր ձևով կրկնած է Անաւարզեցին Լևոնի ուղղած պաշտօնական թուղթին մէջ, ինչպէս ժողովականք ալ կ'ըսեն, թէ* զսուրբ թագաւորականն ցեղն ի Նոյեան ուխտադրեալն Հօրս Մերոյ Գրիգորիոսի *(ԿԱԼ· 467)։ Ցիշեալ նամակն ալ այն է, զոր* առաքեաց առ սուրբ և բարեպաշտ Թագաւորն Լեւոն *(ԿԱԼ· 457), և ոչ այն զոր Հեթումի յղեց, որ երբեք իր մանրամասն չրջանակէն դուրս չելաւ, և պաշտօնական գործողութեանց հիմ չեղաւ (§ 1226)։*

**ԺՈՂՈՎԻՆ ԱՆԶՕՐՈՒԹԻՒՆԸ**

**1235**. *Այժմ կը մնայ ակնարկ մը նետել 1307 տարւոյ Սիսի ժողովին վրայ, և անոր զօրութիւնն ու հեղինակութիւնը ճշդել։ Կալանոս այնպէս զմայլած է յիշեալ ժողովին արդիւնքովը, որ զայն միայն՝ իբր միակ հեղինակաւոր և վճռական ժողով կ'ուզէ ցուցնել Հայոց համար, և անոր որոշմանց հպատակեցնել Հայոց եկեղեցին։ Ցաղթական պարծենկոտութեամբ մը կը հռչակէ, թէ* ոչ ոք այսուհետև կարող լինիցի անուանել զսնոտի կամ խաբէական զօրութեան փոփոխեցուցանել զաներկբայական զօրութիւն Սսոյ ժողովոյն այսորիկ, զի նա եղև Հայոց ընդհանուր օրէնսդրաւ և մեծագոյն քան զայլս ամենայն, որք ժողովեցան ի Հայաստան *(ԿԱԼ· 453)։ Սակայն չհաստատեր թէ ինչով Հայոց եկեղեցւոյն բազմաթիւ ժողովները, որոնցմէ տասը հատը յիշած էին Սսեցիք (§ 1218), մէկ Սիսի ժողովով կրնան ոչինչ համարուիլ, և Հայ եկեղեցւոյ հազար տարուան անփոփոխ դաւանութիւնն ու աւանդութիւնը կրնայ ջնջուիլ Սիսի մէջ գումարուած մէկ օրուան ժողովով մը, որ օրինաւորութեան ալ՝ նոյնպէս եղած պայմաններէն ալ զուրկ էր։ Իսկ* Մեծագոյն *լինելուն իբր բացատրութիւն ժողովականներուն* բազում *եղած ըլլալը կը դնէ հայերէնին մէջ, իսկ լատիներէնին մէջ ժողովականներուն եպիսկոպոսներով և վարդապետներով 56 եղած ըլլալը կը ճշդէ, որ իր տուած կրկին ցուցակներուն առաջինին կը պատասխանէ (§ 1230)։ Սակայն պահ մը իր լատինական սկզբունքին ալ կը մտնայ, որ եպիսկոպոս-*

ներէ զատ ուրիշներու վրայ որոշիչ ձայնի իրաւունք չճանչնար. և թիւը մեծ ցուցնելու համար 26 եպիսկոպոսներուն հետ կը խառնէ 30 վարդապետները և վանահայրները և իշխանները, իբրև հեղինակաւոր ժողովական։ Աւելցնենք ևս, որ նոյն ինքն Կալանոսի երկու իրարու անյարմար ժողովականաց ցուցակ տալը (ԿԱԼ. 458, 469) այնչափ նշանակելի թերութիւն մըն է, որ նոյն իսկ ժողովին գումարման վաւերականութեանը կը վնասէ և հեղինակութիւնը կը կոտրէ։ Կալանոս որպէս զի ժողովին ոյժ մը տայ հրամանաւ տեառն Գրիգորի կաթողիկոսի գումարուած կը ծանուցանէ (ԿԱԼ. 465), սակայն Գրիգոր ժողով չհրաւիրեց, այլ Հեթումի և Լեւոնի միջնորդեց որ հրաւիրեն, և չհրաւիրած ինքն մեռաւ, և ժողովը պարզապէս թագաւորական հրամանով գումարուեցաւ, և ժողովականք ալ կ'ընդունին թէ մեծ և երջափառաւոր թագաւորին Լեւոնի պատշաճ համարեցան ժողովականքն (ԿԱԼ. 458)։ Ինքը Կալանոս ալ կը պարտաւորուի աւելցնել թէ ժողովը հրամանաւ Հայոց արքային Լեւոնի եղաւ (ԿԱԼ. 455), և չանդրադառնար որ իւր պաշտպանած լատինական սկզբունքը՝ օրինաւոր չընդունիր թագաւորական հրամանով գումարուած ժողովը, և եկեղեցական իշխանութիւն կը պահանջէ։ Իսկ Սսոյ ժողովին գումարուած ատեն եկեղեցական իշխանութիւնն ալ կը պակսէր, և ժողովը կաթողիկոս նախագահ չունէր, վասնզի Կոստանդին Կեսարացին, որ առաջին կը ստորագրէ, լոկ եպիսկոպոս Կեսարու կերպարանէն աւելի բան մը չառներ վրան (ԿԱԼ. 459), և ոչ իսկ իբր տեղապահ կաթողիկոսական աթոռոյ կը ներկայանայ։ Ուրեմն ոչ միայն մեծագոյն ժողով մը չէ, այլ և ոչ օրինաւոր և վաւերական ժողով մըն է, և պարզապէս անփոյթ և անկանոն համախմբութիւն մըն է, ուր թագաւորական ճնշման և ազդեցութեան ներքեւ քանի մը ժամուան մէջ, պարզ հանդիսական տօնախմբութեան ձեւով, առանց քննութեան և առանց վիճաբանութեան համակերպութիւն կը յայտնուի, որպէս զի ստորագրութեամբ մը ապատին և մեկնին, եաքէն ուզածնուն պէս վարուելու և վերաբերուելու համար։

1236. Աննշանակ ձեւակերպութիւն եղած ըլլալուն մասին դիտողութիւննիս, պարզապէս մեր մտածմունքը չէ, զի նոյն ատեն ձայն բարձրացուցին Սիւնեցիք նախագահ, որոց բերնով կը գրէ Մովսէս Երզնկացի վարդապետը, որ Կիլիկեցւոց գրոյն մէջ կարդալով թէ բազմութիւն ժողովեցան, կը բողոքէ. Սուտ ասէ, կը գրէ, զի սակաւք էին և ոչ բազումք, և դարձեալ թէ պարտ էր յամենայն Հայաստանեայց հաւաքել և ժողովել, և անկէ ետքը ընդունիլ, եթէ ամենեքեան հաւանեալ էին։ Որ յերևանի է այդ, կը գրէ Մովսէս զայրացկոտ շեշտով, ինքնահաճոյ մարդոց անխորժակօք գրել, և գրածնին ոչ ամենեքեան հաստատել են՝ ընկալեալ (ՍԱՄ. 298)։ Ահա թէ ինչ դատաստան ըրած են ժամանակակիցները Սսոյ ժողովին նկատմամբ։ Քանի մը Կիլիկեցի եպիսկոպոսներ, հապճեպ գումարուած, առանց կաթողիկոսի, քանի մը ժամուան մէջ որոշում կու տան։ Հայոց եկեղեցւոյ եպիսկոպոսութեան մեծ կէսը ոչ կը հրաւիրուի և ոչ կը մասնակցի, ոչ ոք Սիւնիքէն, ոչ ոք Վասպուրականէն, ոչ ոք Տարօնէն, և միայն չորս աննշան ներկաներ, որոց երկուքն ալ ստորագրութիւն տալէ կը խուսափին։ Արդէն դիտեցինք՝ թէ երկրորդ ցուցակին մէջ աւելցուած անունները իբրեւ ներկայ հնար չէ ընդունիլ (§ 1231), թող որ եթէ ընդունինք ալ, գլխաւոր եպիսկոպոսներ չեն անոնք, ոչ Յովհաննէս Օրբելեանը Սիւնիքի կողմէ, և ոչ ալ Զաքարիա Ծործորեցին, որ այնչափ միտեալ էր Անաւարզեցիին կողմը (§ 1223)։ Մովսէս Երզնկացի կը վկայէ ևս, թէ նոյն ինքն ի տեղին բազումք հակառակեցան, ինչ որ ներկաներէն ոմանց ստորագրութեանց մէջ չգտնուելուն առիթով դիտեցինք, և կը յաւելու թէ ըստ փոխանին էին հակառակին, և տրուած որոշումին մասին կը հետեւցնէ, թէ ոչ է ճշմարիտ, այլ սուտ է (ՍԱՄ. 298)։ Հետեւապէս Կալանոսի խրոխտանքին հետ անհիմն կը դառնան, ուրիշ համեմատութիւններուն տեսութիւններն ալ, որ Սիսի Ս. Սոփիա եկեղեցւոյն մէջ 1307 մարտ 19'ին գումարուած ժողովին հեղինակաւոր ժողովի արժէքը կու տան, և անկէ Հայադաւան եկեղեցւոյն համեմատութեան անցած ըլլալուն եզրակացութիւնը կը

ԸՆԴԴԻՄԱԴԻՐ ՇԱՐԺՈՒՄ

քաղեն (ՁԱՄ. Գ. 310)։ Այս' կրկան թագաւորն ու թագաւորահայրը իրենց իշխանական և արտաքին ազդեցութեամբ և յուսադիր հրապոյրներով՝ քանի մը եպիսկոպոսներէ այս տեսակ ստորագրութիւն մը կորզել, բայց Հայ եկեղեցւոյ դրութիւնը անով չփոխուեցաւ։ Նոյն իսկ ստորագրողներն ալ տեղերնին դառնալնէն ետքը գործադրութեան չձեռնարկեցին (ՁԱՄ. Գ. 311), և յայտնապէս իսկ մերժեցին (ՄՈՎ. 221)։ Մենք պէտք չենք զգար ուրանալ գրուածին վաւերականութիւնը, և երկբայիլ թէ Անաւարզեցին իսկապէս գրած ըլլայ իրեն վերագրուած նամակները, ինչպէս կասկածողներ եղան (ՁԱՄ. Ա. 257), որովհետև չատ յստակ են պատմական կապակցութիւնները, և ոչ ալ անկէ հետեւանք մը կրնայ քաղուիլ, քանի որ ինքն Անաւարզեցին համեմատականութեան համաձայն մը եղաւ, բայց պաշտօնապէս համեմական չեղաւ (§ 1229)։ Սսոյ ժողովը գումարուեցաւ և փակուեցաւ միեւնոյն օրը, 1307 մարտ 19'ին, իսկ չորս օր ետքը, մարտ 23'ին, աւագ հինգշաբթի օր ընտրողական նիստ բրաւ, և նոր կաթողիկոսը ընտրեց ու հաստատեց (ԿԱԼ. 452), բայց մենք այդ ընտրութեան չանցած, պէտք է խօսինք Անաւարզեցիին ժամանակակիցներուն վրայ, որոց գործերը պատմութեան ընդհանուր եղելութեանց հետ կապ չունէին։

**1237**. Կիլիկիոյ արքայազուն եկեղեցականաց կարգին յիշենք նախ Հեթում Ա թագաւորին կրտսեր եղբայր Յովհաննէս եպիսկոպոսը, որ Գռների վանքին առաջնորդ եղաւ, և [illegible]-եղբայր և [illegible] կոչումները ինքն ալ իբրև մակդիր անուն կը գործածէ (ՀԱՑ. 486)։ Մեծ գործունէութիւն ունեցած չերևիր, բայց ուսումնասէր և գրասէր եղած ըլլալուն նշաններն են իրեն համար գրել տուած գիրքերը, որոց վերջինը 1287 թուականն ունի (ՀԱՑ. 490)։ Իսկ գրական կարողութեանն ալ նմոյշ պէտք է ընդունիլ իր թագաւոր եղբօր նուիրած ոտանաւոր դրուագը (ՀԱՑ. 490)։ Մահը տեղի ունեցած է 1289'ին (ՍԻՍ. 556)։ Հեթում Ա իրմէ մեծ եկեղեցական եղբայր մըն ալ ունեցած էր, Սիսի արքեպիսկոպոս և Դրազարկի առաջնորդ Բարսեղը (§ 1105), որ վախճանեցաւ 1275 (ՍԻՍ. 233) ապրիլ 19'ին (ՑԱՍ. Ա. 175)։ Հեթում Բ ալ եկեղեցական եղբայր մը ունեցաւ, Ներսէսը (§ 1214), որ լոկ [illegible] կոչումով կը յիշուի, ոչ զի ամուսնացեալ եկեղեցականութեան կը պատկանէր, այլ զի հազիւ նոր քահանայացած 22 տարեկան վախճանեցաւ 1301 մայիս 26'ին (ՍԻՍ. 557), կամ մայիս 7'ին (ՑԱՍ. Ա. 205), քաջ երաժիշտի համբաւով, և հաւանաբար Արքակաղին վանքի միաբան եղած (ՍԻՍ. 517)։ Արքայական տոհմէն է նաև Հեթում պատմիչը, իշխան Կոռիկոսի, և Հեթում Ա'ի Օշին եղբօրը որդին, որ աշխարհի կեանք վարեց, և զինուորական բարձր դիրք և արդիւնքներ ալ ունեցաւ։ Գրական ախորժակով և կարողութեամբ ալ ճոխացած, թէ իրեն համար յատուկ գիրք'ր պատրաստել տուաւ, զորօրինակ տօմար մը 1287'ին, և բժշկարան մը 1294'ին, այլ և ինքն ժամանակագրութիւն մը պատրաստեց 1076'է 1296 միջոցին համար կատարեալ աշխարհաբար լեզուով (ՀԵԹ. 97-85)։ Կրօնաւորութեան փափաք մըն ալ կանուխէն ծագած էր սրտին մէջ, բայց [illegible] չէր ուզեր ապարապետութեան գործը լքանել, մինչև որ 1305'ի յաղթութենէն ետքը, յարմար միջոց գտնելով, և որդին Օշինը իր տեղը անցընելով՝ Կիպրոս անցաւ, և Պրեմոնստրատեանց (Praemonstratenses) լատին միաբանութեան մէջ մտաւ (ՀԵԹ. 67), որ Օգոստինեան կրօնաւորներու մէկ նոր ճիւղն էր 1120'ին կազմուած, և բաւական ծաղկած կացութիւն էր ստացած։ Պրեմոնստրատեանց սքեմը ամբողջ ճերմակ էր, և այս հագուստով նկարուած կը տեսնուի Հեթում Փարիզի մեծ մատենադարանին մէջ պահուած գրչագիրի մը վրայ։ Հեթում սքեմին հետ Անտոն անուն ալ առած էր (ՍԻՍ. 340)։ Միւս տարին Հռոմ գնաց ուխտի նպատակով; ուստից 1307'ին Աւինիոն անցաւ Կղեմէս Ե պապի հրաւէրով, և անոր յանձնարարութեամբ Թաթարաց պատմութիւն մը գրեց, ու Ֆուլկոն անուն անձի մը օգնութեամբ գաղղիերէնի վերածեց, որ շուտով լատիներէնի ալ թարգմանուեցաւ, և վերջերս հայերէն հրատարակուեցաւ։ Իսկ Հեթումի հայերէն բնագիրը դեռ գտնուած

չէ (ՍԻՍ· 338)։ Մահուան թուականն ու տեղը յայտնի չեն, միայն կը գիտցուի թէ Գաղղիոյ Պիկտաւիա (Poitiers) քաղաքի վանքը կը բնակէր։ Յայտնութեան մեկնութիւն մը և ուրիշ եկեղեցական գրուածներ ալ ունեցած ըլլալը կը գրուցուի (ՍԻՍ ·339)։

**ՄԱՏԵՆԱԳԻՐ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ**

**1238**․ Ժամանակիս Կիլիկեցի վարդապետներուն մէջ առաջին տեղը պէտք է ընծայել Գէորգ Սկեւռացիին, այսպէս կոչուած իւր միաբանութեան վանքէն․ բայց Սկեւռայէն շատ Գէորգ վարդապետներ եղած ըլլալուն (ՀԻՆ· 708), աս ասէկ Լամբրոնացի կը կոչուի իւր ծննդավայրին անունով։ Ուսման համար Արեւելեան վանքերը շրջելէն ետքը Սկեւռայ վանքը հաստատուեցաւ, և գրական երկասիրութեանց հետեւեցաւ, որոց մէջ գլխաւոր են Արուեստ Քերականութեան գործը՝ Արիստակէս հռետորի հետեւողութեամբ, և Եսայիի մեկնութիւնը Հեթում Բ'ի խնդրանօք գրուած։ Ունի և Գործոց մեկնութիւն մը և զանազան ճառեր։ Մահը տեղի ունեցած է 1301 յունուար 11'ին, չորեքշաբթի օր, և իրեն վրայ շատ փայլուն յիշատակարան մը և տաղաչափեալ ողբ մը գրած է, իւր աշակերտներէն Մովսէս Սկեւռացի (ՀԱՑ· 504)։ Գէորգի քեռին էր Գրիգոր Սկեւռացի, սա ալ Լամբրոնացի եւս կոչուած ծննդավայրէն առնելով, զոր յիշեցինք Լեւոն Բ թագաւորի մահուան պահուն քովը գտնուելուն առիթով (§ 1096)։ Գրիգոր ալ գրած է ճառեր և մեկնութիւններ (ՀԻՆ· 716) և Յովհաննու Կարապետի Արեգականն շարականը (ՏԱԹ· 638), բայց իւր մահուան թուականը որոշ չէ։ Սկեւռացւոց հետ պէտք է յիշուի Ստեփաննոս քահանայ Գոյներիցանց, որ եթէ հեղինակ մը չէ, բայց հեղինակներու գործերուն ճարտար և ուղղագիր և անխոնջ ընդօրինակող մըն է, և իր յիշատակարանով մնացած գրչագիրներ բազմաթիւ են (ՀԱՑ· 503), այնպէս որ անտեղի պիտի չըլլար կարծել թէ ընդօրինակութեան գործատունի մը գլուխն էր։ Ինքն եղած է Գէորգ Լամբրոնացիին Արուեստ Քերականութեան գիրքը գրելու յորդորողը։ Յովհաննէս Ծղուղ վարդապետ մըն ալ կը յիշուի 1293 տարին, որ թէպէտ միայն մէկ համառօտ ոտանաւորով ծանօթ (ՍԻՍ· 154), սակայն նմոյշը իրաւունք կու տայ արդիւնաւոր մէկը ճանչնալ զինքն։ Յիշենք և Մովսէս Երզնկացի վարդապետը, որուն անունը արդէն անգամ մը տուինք Սսոյ ժողովին մասին ըրած քննադատութեան առիթով (§ 1236)։ Երզնկացի մականունը առած է սովորաբար, թէպէտ բնիկ Դարանաղեաց Անի քաղաքէն էր, որ է այժմեան Կամախը․ Ներսէս քահանայի մը զաւակ, և ազգաւ մեծափառ և երեւելի։ Զօրաւոր ախոյեան մը եղաւ հայադաւան ուղղութեան երեք ժողովներու հիման վրայ հաստատուած, Ոսկեփորիկ գիրք մը, և Պատարագի մեկնութիւն մը, և շատ թուղթեր ու ճառեր գրեց, և պայծառացուց Սեպուհի վանքերը։ Կեանքը երկարեցաւ մինչեւ ի խորին հասեալ ծերութեան (ՀԱՑ· 508), և վախճանեցաւ 1323'ին ինչպէս կը դնէ Անեցիին շարունակողը (ՍԱՄ· 167), և ամսաթիւով մայիս 28'ին, Ելն ի վիրապէ տօնին (ՀԱՑ· 509)։ Մովսէսի պէս վերի յիշուած վարդապետներն ալ, Անաւարզեցիին ծրագիրին պաշտպաններէն չեղան, թէպէտ ոչ ամէնքը Մովսէսի համարձակ դիմադրութիւնն ունեցան։

**ՆԵՐՍԷՍ ՄԵԾԻ ՆՇԽԱՐՔԸ**

**1239**․ Նշանաւորագոյն է ժամանակակիցներուն մէջէն Յովհաննէս Երզնկացի վարդապետը, իւր գրիչին ներքեւ Եզնկայեցի գրուած, Երզնկա ծնած չուրջ 1250'ին։ Երզնկացին կոչուած է եւս Ծործորեցի, երկար ատեն Արտազ գաւառի Ծործորի վանքին մէջ ապրած ըլլալուն համար, Քաղցրէկ՝ իւր գրած ներդաշնակ երգերուն ու շարականներուն համար, Պլուզ՝ բառ ոմանց կապոյտ աչուի ըլլալուն (ՉԱՄ· Գ· 271), բայց աւելի հաւանաբար մանրուկ և կարճահասակ ըլլալուն համար (ՀԱՑ ·514), և Մաշածին՝ (ՀԱՑ·513) որուն ոչ միայն պատճառը այլ և իմաստն ալ անծանօթ կը մնայ։ Առաջին ուսմունքն Սեպուհի վանքերը առնելով, լրումը տուաւ Վարդան վարդապետի մօտ Կայէնի վանքը (§ 1141), ուսկից նորէն իւր հայրենիքը դարձաւ։ Ս․ Ներսէս Պարթեւ հայրապետին նշխարաց յայտնուիլը, Երզնկացիին առաջին անգամ փայլելու առիթը ընծայեց, և այս առիթով գրեց գիւտին պատմութիւնը,

*և սրբոյն պատուոյն Նկրբողեան մը* (ՍՈՓ. Է.) *և գեղեցիկ չարական մը* (ՇԱՐ. 434)։ *Այդ գիւտին պատմութիւնը անցողակի միայն յիշած ենք Ներսէսի մահուան առթիւ* (§ 155), *և աւելորդ չենք սեպեր քանի մը խօսք ևս աւելցնել։ Եկեղեաց Թիլ աւանը, ուր էր Ներսէսի գերեզմանը* (§ 155), *աւրուած էր զանազան արկածներու երեսէն և գերեզմանի տեղն ալ անյայտացած, բայց վանք մը կը մնար այնտեղ։ Պատուական անուն սարկաւագի մը, յունուար 26 հինգշաբթի օր մը, առաջին անգամ տեսիլքի մէջ գերեզմանին տեղը կը ցուցուի* (ՍՈՓ.Է.47), *յաջորդ գիշեր յորում ուրբաթն լուսանայր* (ՍՈՓ. Է. 48) *տեսիլքը կը կրկնուի, և երբ վանականներուն կը հաղորդէ, կ'որոշեն երրորդ տեսիլքի սպասել, ինչ որ տեղի կ'ունենայ միւս գիշեր, յորում միաշաբաթն լուսանայր* (ՍՈՓ. Է. 49)։ *Ասոր վրայ Թիլայ վանքին առաջնորդ Ներսէս վարդապետ կը դիմէ Երզընկայի արքեպիսկոպոս Սարգիսի, որոյ որդին Յովհաննէս քաղաքին իշխանն էր, և ցուցուած տեղը բացուելով Ներսէս Մեծի ամբողջ մարմինը կը գտնուի կոփածոյ քարէ ծածկուած, խաչաձեւ յարկու ձեւի մէջ* (ՍՈՓ. Է. 52), *օրն էր՝ մեծի վեցերորդէ աւուր* (ՍՈՓ. Է. 5)։ *Սարգիս եպիսկոպոս մեծ հանդէսով նշխարքները ամփոփել կու տայ Տիրաշէնի վանքը, այլ առանձին քաղաքին եկեղեցին կը դնէ, և գլուխը ժողովուրդին բարեպաշտութեան կը թողու, յատուկ և հարուստ մասնատուփեր ալ պատրաստել տալով։ Այդ գիւտին թուական ցուցուած է Քրիստոսի ծնունդէն 1275 տարի, Լուսաւորիչէ 968, Ներսէսի մահէն 872* (ՍՈՓ. Է. 45), *և Արշակունեաց իյնալէն 824* (ՍՈՓ. Է. 39), *Հայոց թուական 721, Յակոբ Կլայեցի կաթողիկոսին, և Լեւոն Հեթումեան թագաւորին օրով* (ՍՈՓ. Է. 45)։ *Բայց այս թուականները դժուարաւ կրնան իրարու հետ համեմատուիլ, ինչ որ հին ժամանակագրութեանց անճշդութեան հետեւանք է։ Քրիստոսի 1275 տարին, Հայոց 724'ին և ոչ 721'ին կը համապատասխանէ, և յունուար 26 հինգշաբթի մը՝ 1273'ին կը հանդիպի, որով փետրուար 1, գիւտի օրն ալ չորեքշաբթի կ'իյնայ։ Թէպէտեւ այս տարբերութիւններէն մին կամ միւսը նախադասելու զօրաւոր պատճառներ կը պակսին, բայց յարմարագոյն կը սեպենք 1273 թուականը ընդունիլ, երբ Երզնկացին դեռ նորահաս երիտասարդ էր չուրջ 23 տարեկան։ Երզնկայի Սարգիս եպիսկոպոսի մը անունը 1307 տարւոյ ժողովին յաւելուածական ցուցակին կարգը անցած է* (§ 1177), *սակայն նա վերոյիշեալ Սարգիսը չկրնար ըլլալ, որ որդւոյն Յովհաննէս իշխանին հետ 1276'ին անդարձ մահուամբ սպանուած են* (ՀԻՆ.756)։

**1240.** *Յովհաննէս Երզնկացիի գործունէութեան դառնալով, 1280'ին ատենները Երզնկայի վանքերուն համար կանոնք և սահմանք կը պատրաստէ, 1281'ն Երուսաղէմ ուխտի կ'երթայ, դարձին Յակոբ Կլայեցի կաթողիկոսին կ'այցելէ Հռոմկլայ, զոր կը կոչէ ճեմելիք հոգւոց և հանճարոյ իմաստասիրութեամբ, կերակուր աստուածաշնչական գրոց, աննախանձաբար սփռել և պարգևել ուսումնասիրաց* (ԵՐԶ.)։ *Երզնկացի այնտեղ կը մնայ իբր ուսումնարանին վերակացու, և կաթողիկոսին հրամանով կը սկսի պատրաստել իւր մեծ երկասիրութիւնը, որ է Մեկնութիւն քերականին* (ՀԱՑ. 509), *որ հայերէն լեզուի վրայ նշանաւորագոյն աշխատութիւնն է։ Սակայն լրումը 1293'ին է եղած* (ՍԻՍ. 549)։ *Սիսի մէջ յատուկ ատենաբանութիւն մըն ալ խօսած է 1284'ին, Հեթում ու Թորոս արքայորդիներուն ասպետական աստիճան բարձրացած օրը* (ՀԻՆ.757։ *Միեւնոյն տարին եղած է Տփղիս* (ՀԱՑ. 512), *ուր պատրաստած է Ցուցք երկնային շարժմանց գիրքը, Վախթանկ Ումեկեան իշխանազունին խնդրանքով և Յովհաննէս եպիսկոպոսի մը յորդորներով* (ՀԻՆ.761)։ *Որոշ չենք գիտեր թէ երբ Տփղիսէ Արտազ անցաւ Զաքարիա Ծործորեցիի մօտ, և թէ ուր տեղեր պտտեցաւ մէկ տեղէն միւսը անցած ատեն, միայն գիտենք, թէ երկար տեւեց Ծործորի վանքը մնալը, Ծործորեցի մականունը ստանալու չափ։ Այն տեղ էր 1307'ին Սսոյ ժողովին ատենը, բայց ոչ Զաքարիա և ոչ Յովհաննէս չեն ուզած Սիս գալ, որչափ ալ Զաքարիա համակիր մըն էր Անաւարզեցիի ծրագիրին, և Յովհաննէս ալ հետամուտ էր Արեւմուտքէ եկող ուսումնական առաւելութեանց ծանօթանալ, և անոնցմով զարգանալ։ Ծործորի*

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՐԶՆԿԱՑԻ

*մէջ գրած է 1316'ին (ՀԱՑ.513) Մատթէոսի աւետարանին մեկնութիւնը, զոր պատրաստած է իբր շարունակութիւն և լրումն Շնորհալիին թերի թողած աշխատութեան (988), իսկ թերի մնալուն պատճառը ինքն Երզնկացին ալ չէ գտած (ՀԱՑ.512)։ Մեր տեսութեամբ հաւանական չէ որ Երզնկացին 1309'ին Ատանայի ժողովին եկած ըլլայ, ինչպէս իւր կարգին դիտել պիտի տանք։ Երզնկացիին ուսումնատենչ փափաքը զինքն մօտեցուց Դոմինիկեան լատին կրօնաւորներուն ալ, որոնք սկսած էին տարածուիլ Հայաստանի մէջ, և 1318'ին եպիսկոպոսներ և եպիսկոպոսարաններ ալ ունենալ սկսած էին։ Երզնկացիին կը վերագրուի՝ միջնադարեան լատին աստուածաբաններուն նախապատիւ սեպուած Թովմաս Ակուինացիին գործերէն մէկ մասին լատիներէնէ հայերէնի թարգմանութիւնը (ՀԻՆ.758)։ Երզնկացիի կեանքը մինչեւ 1326 երկարաձգուեցաւ հաւանաբար (ՀԻՆ.754), սակայն շարունակ Ծործորի մէջ մնացած պիտի չըլլայ։ Ժողովրդական աւանդութիւն մը անոր անունը կը կցէ 1319 տարւոյ մեծ երկրաշարժին, որուն մէջ Անի ալ մեծապէս վնասուեցաւ, թէպէտ տակաւին անբնակ չլքուեցաւ (ԵՓՐ.Ա.182)։ Զրոյցը կը պատմէ թէ Երզնկացին Անի եկած էր ապաշխարութիւն քարոզելու, իսկ քաղաքացիք կը ծաղրէին զայն, նոյն իսկ եկեղեցականներ յետին տեղին կու տային եկեղեցւոյ մէջ, և բարձր գրակալ կը դնէին առջեւը, մինչ նա կարճահասակ էր։ Երբոր ժողովուրդը իւր խէնէշ կեանքէն չէր դադարեր, մահ սաստիկ և գազաններու վոհմակներ ժողովուրդը կը կոտորէին, որոնցմէ ազդուելով ժողովուրդը զղջումի կու գար։ Բայց երեք տարիէն նորէն առջի անառակութեանց կը դառնար։ Երզնկացին նորէն կու գայ ապաշխարութիւն քարոզելու, բայց Անեցիք վերահաս չարիքներու պատճառ նկատելով զայն, թմբրադեղով կը մարեցնեն, և մերկացնելով քաղաքին մէջ կը պտտցնեն, և զամբիւղի մէջ դնելով աւագ եկեղեցւոյ դուռը կը կախեն, մինչեւ սթափի, ուսկից եօթը Ֆրանգ եղբարք կ'աքսորեն, սպանելով որ չդառնայ։ Ասոր վրայ Երզնկացին բարձր բլուր մը ելլելով քաղաքը անիծած կ'ըլլայ, և իսկոյն երկրաշարժը կը սկսի (ՀԱՑ.515)։ Որչափ և պարզ զրոյց մը, բայց հարկ սեպեցինք յառաջ բերել իբրեւ ժամանակին զգացումն՝ բուն նմոյշ։ Ընդհակառակն Երզնկացիին ներող ու հեզ հոգին յայտնի կը լինի անով, որ ուրիշներ իրենց յիշատակարաններուն մէջ անէծքներ և նզովքներ կը գրեն, նա կը բաւականանայ ըսել.* Որ ծուլանայ և ննջէ, ու չէջէ տանց զամոց, *(ՀԱՑ.512)։ Երզնկացին սովորաբար Ծործորի վանքը մնացած և թաղուած կը կարծուէր, այլ Սրուանձտեան անոր գերեզմանաքարը տեսեր է Երզնկայի Ս. Նշան եկեղեցին, առաջնորդական աթոռին ներքեւ (ԹՈՐ.Բ.50)։*

**1241.** *Երզնկացիին ոչ միայն ժամանակակից, այլ և կրտսեր աշակերտակից եղած է Եսայի Նչեցի վարդապետ, և Վարդան վարդապետի մահուընէ ետքը*

**ԵՍԱՅԻ ՆՉԵՑԻ**

*զարգացած է Ներսէս Տարոնեցի վարդապետին մօտ, որ Մշոյ Առաքելոց կամ Ղազարու վանքը հաստատուած էր։ Եսայի Սասունցի էր Նիչ աւանէն, և Տարօնոյ մէջ Ներսէսի մօտ զարգանալէն ետքը՝ նորէն դարձաւ Սիւնիքի կողմերը, և հաստատուեցաւ Գայլեձորի վանքը, և մեծ համբաւ ստացաւ իբրեւ վարդապետաց վարդապետ, այնպէս որ մինչեւ 363 կը հանեն իրեն հասուցած աշակերտներուն թիւը (ՁԱՄ.Գ.316)։ Նչեցին ալ գրեց քերականի և մարգարէութեանց մեկնութիւններ, ինչ որ ժամանակին վարդապետներուն գլխաւոր նիւթն էր իրենց գլխաւոր աշխատութեանց համար։ Այդ առեններ տակաւին կ'ընդարձակուէր Դոմինիկեան լատին կրօնաւորներուն ազդեցութիւնը Հայաստանի մէջ, որ օտար լեզուի հետ Արեւելքի անծանօթ դրպրոցական ուսմանց ասպարէզը կը բանային Հայերուն առջեւ, և ասոնք ալ իրենց բնական անյագ տենչանքով համարձակ կը մտնէին որեւէ զարգացման օգնող դուռնէն ներս, նոյն իսկ չատ անգամ առանց դիտելու թէ ուր պիտի տանէր զիրենք ընդգրկած ճամբանին։ Ասկէ ծագեցաւ Լատինաց հետ միաբանելու հոսանքը, որ աւելի լատին բառով կը յիշուի պատմութեան մէջ, Ունիթոր (Unitor) և Ունիթորութիւն անուններով։ Լատիններ նախապէս հաստատուած էին Պարսկահայոց սահմաններ, իրենց կեդրոն*

ունենալով Սուլտանիա քաղաքը, և անտի հետզհետէ յառաջացան դէպ հիւսիս, և իրենց կեդրոն ըրին Նախիջևանը, Սիւնիքի Ջահուկ գաւառը, ուսկից ծագեցաւ ունիթորական Հայերու Ջահկեցի անունը։ Անաւարզեցիին ժամանակը տակաւին այնչափ զօրացած չէր ունիթորական շարժումը Սիւնեաց մէջ, թէպէտև սկսած էր լատինական գործունէութիւնը։

**1242**. Այստեղ պէտք էր առանձինն խօսիլ Ստեփաննոս Օրբելեան մետրապոլիտին վրայ, որ դարուս նշանաւորագոյն դէմքերէն մին եղաւ, սակայն պատմութեան կարգին հետզհետէ առջևը բերինք անոր գործունէութիւնը ու կեանքը, և պէտք չինար նորէն անդրադառնալ։

ՍՏԵՓԱՆՈՍ ՕՐԲԷԼԵԱՆ

Իր գլխաւոր երկասիրութիւնն է Պատմութիւն Նահանգին կամ Տանն Սիսական, որուն մէջ վիճակագրական տեղեկութիւններ ալ խառնած է։ Ճինարար եպիսկոպոս մըն ալ եղած է՝ Սիւնեաց վանքերն ու եկեղեցիները ծաղկեցնելով, զորս ինքն իսկ կը նկարագրէ (ՕՐԲ. Բ. 231—245), և որոց գլխաւորներն են, Տաթևի երրորդ շինութիւնը, Նորավանքին նուիրած Դլենայ խաչը, Ծակուտքարի կալուածը, Ջուայ գիւղը, և Արատեսի վանքին ընծայուած թեմերը։ Իր նուէրները յափշտակողներուն կարդացուած անէծքներուն մէջ նկատողութեան արժանի են այլազգիներուն մասին բռուածները, որ Եթէ Տանն իշխանութեան փոխի, և նա նենգել և բանաբարել խորհի, յԱստուծոյ և յիւր Մահմետէն ողէշր լիցի, և իւր հոգին հրով երեցի. և հարէւր հազար նալաթ ի վերայ նորա և ադէֆ նորա և ղառակոց նորա եղիցի (ՕՐԲ. Բ.240)։ Օրբելեանի մահուան պարագաները չեն յիշուած պատմութեանց մէջ (§ 1221)։

**1243**. Այդ միջոցին նահատակուած նոր վկաներէն է Գրիգոր Բալուեցի վարդապետը, որ առաջ ամուսնացեալ քահանայ է եղած, բայց երկու տարիէ այրիանալով կ'երթայ աշակերտիլ Վարդան վարդապետի մօտ Խորվիրապի և Կայէնի վանքերը, և վեց տարի ետքը վարդապետական գաւազան առնելով Բալու կը դառնայ, և Ս. Ցակոբի վանքը հաստատ-

ԳՐԻԳՈՐ ԲԱԼՈՒԵՑԻ

ուելով, քաղաքին և շրջակայից մէջ քարոզութեամբ կը զբաղի, ընդհանուր յարգանքի արժանանալով։ Գրիգոր Խարբերդ կը գտնուէր 1289'ին, երբ քաղաքը Եգիպտացիներէն յարձակում կրեց, ու քաղաքին Խաբանդ իշխանին եղբայրը գերի տարուեցաւ։ Իշխանը իւր խորհրդակիցներով մտածեց քրիստոնեաները բանդարկելով եղբօրը փրկանքը անոնցմէ հաւաքել։ Այս նպատակով չուն մը ապաննել կու տայ, և մկկիթին դուռը կը կախէ ու քրիստոնեաները ամբաստանելով կը ձերբակալէ վարդապետն ու 45 այր գոռառաւոր է թոլոթէն (ՆՈՐ. 119)։ Ասոր վրայ կը սկսին բանադատութիւններ, որոնք իսլամութիւն ընդունելու պայմանին կը յանգին։ Վարդապետը համարձակօրէն կ'ընդդիմանայ, սպառնալիքները կ'անարգէ, այս պատճառով գանակոծութեամբ կը փորձուի, և 300 հարուածներու կը տոկայ։ Իրեն հետ բռնուած կ'ըլլան իւր երկու աշակերտները Սիմէոն ու Կիրակոս, իբր վարդապետին գործակիցներ, և հարուածներու ներքև կը մեռնին։ Կ'ուզեն միւս բանտարկեալներն ալ տանջել, այլ Թաթխարա անուն զօրապետը դէմ կը դնէ և կ'ազատէ. իսկ վարդապետը քարկոծմամբ կը նահատակուի խանին ճաղանճին ձեռքով։ Նահատակութեան օրը նշանակուած է 1290 փետրուար 10 ուրբաթ, և Հայոց 739 հոռի 4 չարժական տոմարով, որ ուղիղ կը պատասխանէ. միայն թէ այդ ամսաթիւերը կը պատասխանեն ուրբաթ օրուան, յորում Գրիգոր նահատակուեցաւ, և ոչ յաջորդ շաբաթ օրուան յորում մարմինը վրայ լոյս ... տեսնուած (ՆՈՐ. 117)։ Նոյնպէս ուղիղ չպար յիշեալ շաբաթ օրուան համար ի տօնէ սրբոյն Սարգսէ բուլիր, վասնզի 1290 փետրուար 11 շաբաթ օր Կոստանդնուպոլսոյ ժողովին տօնը կը հանդիպի, և ոչ Ս. Սարգսի։ Կ'երևի թէ շփոթը յառաջ եկած է Ս. Սարգսի պահքին չորեքշաբթի օրը բանտարկուելէն (ՆՈՐ. 110), և նահատակութեան ուրբաթը՝ անմիջապէս վրան եկողը կարծուած է, մինչ երկու շաբաթ, և ոչ երկու օր անցած է, Գրիգորի և ընկերներու բանտարկութիւնը և ուրացութեան բանադատութիւնը։ Իրօք ալ սովորութիւն էր միջոց մը երկարել այդ տեսակ փորձութիւնները։ Բալուեցի նահատակ-

ներուն վկայաբանութիւնը գրողն եղած է Գրիգորի քեռորդին Դաւիթ Բալուեցի քահանան (ՀԱՑ. 117)։

1244. Ժամանակակից Նահատակի մըն ալ յիշատակութիւնը կը գտնենք Սիւնեաց նահանգի Վայոցձոր գաւառի Շատիկ վանքին մէջ, 1291 թուականով։ Արձանագրութիւնը կը գտնուի Ընդեղի մատուռին մէջ, թէ շնորհօք սուրբ Նահատակին, զհոգեորդն Պետրոս յոգնամեղս յիշեցէք, զԿիրակոս միայնակեաց, ուր յայտնի չէ թէ Կիրակոսը՝ նահատակն է, թէ նորոգողը։ Բայց որովհետեւ ուրիշ տեղ մատուռը Սուրբ Կիրակոս անունով կը յիշուի (ՍԻՆ. 160), նահատակն ալ Կիրակոս անուանել սովորութիւն եղաւ (ՆՈՐ. 119), և աւանդութեամբ կը յիշուի թէ պատարագելու ատենը սպաննուած է։

ԿԻՐԱԿՈՍ ՇԱՏԻԿՑԻ

# Տ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Գ. ԿԵՍԱՐԱՑԻ 1307-1322

1245. Գրիգոր Է Անաւարզեցի կաթողիկոսին մահուընէ ետեւ (§ 1229), պէտք էր որ առաջին գործը նոր կաթողիկոսի ընտրութիւնն ըլլար, սակայն Հեթում-Օշինեանց կրօնաւոր-թագաւորահայրը զայն յետաձգել տուաւ, և նախապէս աշխատեցաւ Անաւարզեցիին հետ պատրաստուած ծրագիրին պաշտօնական ձեւ տալ։ Կ'երեւի կասկածեցաւ թէ իրեն ոչ-համակիր կաթողիկոս մը կրնայ ընտրուիլ, և կանխեց աթոռոյ պարապութեան միջոցին իւր քաղաքական ազդեցութիւնը չահագործել, և ապագայ կաթողիկոսութեան յուսադրութեամբ Կոստանդին Կեսարացիին աջակցութիւնը ապահովել, որ նախապատիւ դիրք ունէր ներկաներուն մէջ։ Այս եղաւ 1307 մարտ 19'ի միօրեայ ժողովին նշանակութիւնը, որուն վրայ արդէն խօսեցանք (§ 1235)։ Երբոր Հեթում ու Լեւոն իրենց մտադրութիւնը իրագործուած կարծեցին, այն ատեն միայն կաթողիկոսութեան յաջորդութիւնը ձեռք առին, և կամակատար եպիսկոպոսներու ձեռքով, նոյն իսկ աւագ հինգշաբթի օրը, 1307 մարտ 23'ին, խորհրդաւոր պաշտամանց մէջ կաթողիկոսական օծում կատարեցին Կոստանդին Կեսարացիին վրայ (ԿԱԼ. 452), որպէսզի զատիկին օրը կաթողիկոս ունեցած ըլլան։ Կ'երեւի թէ աւագ երկուշաբթի և երեքշաբթի և չորեքշաբթի օրերը պատարագի կանոն չըլլալուն՝ հինգշաբթիի սպասած են օծումին համար։ Այս տեղ ալ առաջին անգամ նկատելիքնիս Կեսարացի Կոստանդինին անձնաւորութիւնն է, որ ինչպէս կանխած ենք ցուցնել Կատուկեցիէն տարբեր մէկ մըն է (§ 1169)։ Արդէն զանազան առիթներով ալ մեր այդ կարծիքը լուսաբանեցինք, Սկեւռայի օրբարանին կամ նշխարանոցին արձանագրութիւնը բացատրելով (§ 1199), և Անաւարզեցիին կողմէ Սիւնիք գացող Կոստանդինին ինքնութիւնը ճշդելով (§ 1216), բայց այս տեղ ուրիշ բացատրութիւններ եւս յարմար կը դատենք աւելցնել։ Սմբատի շարունակողը պարզապէս կը դնէ. Մեռաւ տէր Գրիգոր կաթողիկոս, և տէրն նստէր Կոստանդին Կեսարոյ (ՍՄԲ. 127), Կալանոսի պատմագիրն ալ կը գրէ. Նստաւ յաթոռ կաթողիկոսութեան տէր Կոստանդին, որ էր եպիսկոպոս մայրաքաղաքին Կեսարոյ (ԿԱԼ. 452)։ Դավրիժեցին ալ կը դնէ, Տէր Կոստանդին Կեսարացին հերձուածող (ԴԱՎ. 335), առանց ուրիշ յաւելուածի, և իրեն կը հետեւի Երեւանեցին, պարզապէս Տէր Կոստանդին հերձուածող գրելով (ՋԱՄ. 17)։ Այդ գրողներէն առաջինները, որք ժամանակով շատ մօտիկներ են, ոչ Պրօնագործ կոչումը և ոչ Կատուկեցի ըլլալը կ'աւելցնեն, որով Կոստանդին Բ կաթողիկոսի հետ նոյնանձ ըլլալուն նշան չեն տար։ Առաջինը մահուանը առիթով ալ, Մեռաւ տէր Կոստանդին Կեսարացին կաթողիկոսն կը գրէ (ՍՄԲ. 130), իսկ երկրորդը Սսոյ ժողովին առթիւ ալ երկու անգամ կը յիշէ, Կոստանդին մեծ արքեպիսկոպոսն Կեսարու (ԿԱԼ. 458), և Կոստանդին եպիսկոպոս Կեսարոյ

(ԿԱԼ. 469), և բնաւ ակնարկ չունի, թէ սա նոյնինքն երբեմն կաթողիկոս եղած անձն էր, ինչ որ իր նպատակին ոյժ տալու համար կարեւոր պարագայ պիտի ըլլար։ Միւս կողմէն Օրբէլեան մեզի մատնանիշ կ'ընէ, Կոստանդին եպիսկոպոս Կեսարու անունով՝ Անաւարզեցիէն նախընթաց եկող անձը (ՕՐԲ.Բ.196), որ անհնար է թէ նախկին կաթողիկոս Կատուկեցին ըլլար (§ 1216)։ Հետեւաբար Անեցիին չարունակողին յաւելուածը, որ է նոյն Գրենտորձն Կոստանդեցի, տէրտէրն է Հեթմոյ (ՍԱՄ. 155), բոլորովին անհիմն և ինքնահնար բացատրութիւն մըն է, զոր պատմական պահանջը, և ժամանակագրական համեմատութիւնն ալ չկրնար ոչ մի կերպով յարմարցնել գործոց ընդհանուր ընթացքին հետ։ Եթէ երբեք Կեսարացին նոյն ինքն Կատուկեցին ըլլար, արդէն գործի գլուխ անցած և Սսոյ ժողովին մէջ նախաթոռ բազմած վայրկեանէն, իբր կաթողիկոս ճանչցուած պիտի ըլլար, և ոչ ալ հնար պիտի ըլլար արդէն օծեալ կաթողիկոսը ժողովէն ետքը կրկին օծել։ Այդ դիտողութիւնները մեզի համար այնպէս վճռական են, որ չենք կրնար ըմբռնել, թէ ինչպէս Չամչեան մտադրութիւն չէ ունեցած այդ կէտին, և երկրորդած է Անեցիի չարունակողին յաւելուածը (ՉԱՄ.Գ.311), և իրեն հետեւած է Շահխաթունեան (ՇԱՀ.Ա.207), Անաւարզեցին չարքին դուրս ձգելու չափ, ինչպէս չատերու հետ, նաեւ Ալիշան (ՍԻՍ. 557), և Մխիթարեան (ԱԲԼ.133) և Մովսիսեան (ՄՈՎ.221)։ Իսկ Չամինեան վերջերս ընդունած է տարբերութիւնը (ՉԱՄ.Ա, 257), զոր մենք կանուխէն հրատարակութեան տուած էինք (99 ԱՐՐ.494, և 09 ԼՈՒ. ՆՈՑ.46), և կը կարծենք թէ այդ կէտը այլեւս խնդրոյ նիւթ չկրնար ըլլալ։

**ԿԵՍԱՐԱՑԻԻՆ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

**1246**. Կոստանդին Կեսարացին, և ոչ եւս Կատուկեցին, կրնայ իրաւամբ կոչուիլ, առաջին ողորմայ ի Սիս (ՍԱՄ.152), վասնզի նա առաջին անգամ, թէ ոչ կատարեալ, գոնէ կէսպաշտօնական ձեւով՝ համէտադաւանութեան հետեւող մը եղած է։ Արդէն Սիմնիքի պատգամաւորութիւնը կատարած ժամանակէն, Անաւարզեցիին կատարեալ համամիտ մը յայտնուած էր, երբ անոր ծրագիրը յաջողցնելու համար Ստեփաննոս Օրբէլեանի մօտ կ'երթար, և ոչ կամէր յանձն առնուլ զգրութիւն պատասխանի թղթոյն (ՕՐԲ.Բ.196), որ իրեն մտքին համաձայն չէր։ Հաւանաբար նոյն ինքն էր վերջին երեք պատգամաւորութիւնները կատարողը (§ 1216), և վերջէն Սսոյ ժողովին մէջ նախաթոռութիւն վարելով, նոյն ծրագիրին պաշտօնական ձեւ տալու աշխատած էր (§ 1235)։ Անաւարզեցին որչափ և հետամուտ, միչտ ժողովի պէտք կը զգար, իսկ ժողով չկրցաւ կազմել (§ 1229), և անձնապէս ինչ ալ խորհած կամ ծածուկ գործադրած ըլլար, իր միտքը ո՛չ պաշտօնապէս հաչակեց, և ո՛չ յայտնապէս գործադրեց։ Կեսարացին եղաւ, որ Սսոյ որոշումները իրեն ուղեգիծ ընդունեցաւ։ Գրուած է, թէ Թագաւորն Լեւոն, և Թագաւորահայրն Հեթում, այլ և իշխանքն Հայոց, խնդրեցին ի սմանէ, զի նովիմք կանոնօքս առաջնորդեսցէ նոցա անխափան (ԿԱԼ.452)։ Սակայն խնդրելու իսկ պէտք չկար, զի Կեսարացին կազմ պատրաստ էր պաշտպան կանգնիլ Սսոյ ժողովի որոշումներուն, որ գրեթէ իր գործը եղած էին։ Միայն դիտելու է, որ պալատականներն են Սսոյ գործին բուն պաշտպան կանգնողներ, եպիսկոպոսներու խօսքը չկայ այլ եւս։ Սսոյ ժողովին ամենաջերմ պաշտպաններն ալ կը խոստովանին, թէ եպիսկոպոսներ չհամարձակեցան ամէն տեղ գործադրութեան մտցնել անոր կանոնները, թէ վանքերու մէջ ինկաւ շշշէան մեծ, և ժողովուրդին մէջ ողջոյն շփոթի, և Սսոյ կանոնները ունեցան խափանումն գործածութեան, և թէ անոնք ուստերեք, բայց եթէ ի Սիս միայն կը պահուէին, և տրտնջիւն կը տարածուէր ամենուրեք, և թշնամութիւններ կը զօրանային Հեթումի և Լեւոնի և Կոստանդինի դէմ (ՉԱՄ.Գ.311)։ Կոստանդին Արեւելեաններուն ալ յանձնարարութիւններ ըրաւ Սսոյ ժողովին որոշմանց համակերպելու, Գրիգոր եպիսկոպոս մը կամ վարդապետ մը նուիրակ հանելով, սակայն Յովհաննէս Օրբել՝ Սիւնեաց մետրապոլիտ, և Ստեփաննոս եպիսկոպոս և Դաւիթ և Եսայի վարդապետներ, այլն ամենայն վարդապետօք և քահանայիւք, չընդունեցան և կաթողիկոսին բացատրական նամակ ալ գրեցին, գլխաւորապէս բաժակի ջուրին և Ծը-

նունդի տօնին վրայ ծանրանալով (ՏԱՇ. 182)։ Կաթողիկոսին անունը լոկ Կոստանդին է յիշուած, որ նոյն ինքն Կեսարացին է, զոր Տաշեան ալ տարածուած թիւրիմացութեան հետեւելով Կատուկեցի Պրօնագործին վրայ կը մեկնէ (ՏԱՇ.1103)։ Վերեւ Սսոյ ժողովին գործութիւնը բացատրած ատեննիս յայտնեցինք անոր ներքին թերութիւնները, և հեղինակաւոր ժողով մը եղած չըլլալը ցուցուցինք (§ 1235), հետեւանքներն ալ կը հաստատեն թէ մեռեալ տառ եղան անոր որոշումները, որով ոչ միայն ի Նախըճեւանցեն, այլ և ի Հեթեւորդէն անզօր և աննշանակ եղած ըլլալը կ'ապացուցուի։

1247. Սակայն այդ անպէտ ձեռնարկները չարագուշակ հետեւանքներ առաջ բերին ազգին վրայ։ Թաթարներու և Եգիպտացիներու թշնամութիւնները վերջացած չէին, և առաջիններ պէտք ունէին միշտ իրենց սահմաններուն վրայ հսկել, և Եգիպտացիներուն դիմադրել Հայերու նիզակակցութեամբ։

ՀԵԹՈՒՄ ԵՒ ԼԵՒՈՆ

Երբոր Սիսի մէջ կաթողիկոսական և ժողովական գործողութիւնները կը կատարուէին, Թաթարներու նոր գունդ մը կը ղրկուէր Ղարբանթա խանին կողմէ (§ 1227), Պիլարղու կամ Բիլարղու զօրավարի մը հրամանատարութեամբ (ԴԱՐ.24), որ ըստ այլոց Կիլիկիոյ մօտերը նստող Թաթար բանակին զօրապետն էր (ՉԱՄ.Գ.311)։ Թաթարներ և Հայեր իրարու բարեկամ և նիզակակից էին, և Պիլարղու Հայոց թագաւորութեան թշնամի չէր կրնար ըլլալ. հետեւաբար երբ անլուծանելի առեղծուած մը կը մնայ՝ Պիլարղուի և Հայերուն մէջ ծագած թշնամութիւնը, դաւաճանութեան հասնելու չափ։ Հեթումի ժամանակագրութեան վերջը դրուած յաւելուածական ծանօթութիւնը, որ Հեթումի չկրնար ըլլալ, դաւաճանաւ ի գէշէ կ'ըսէ, առանց պատճառ ցուցնելու (ՀԵԹ. 86)։ Սիսի մէջ Թաթարներուն կողմէ մզկիթ մը շինելու Հայոց ընդդիմութիւն ցուցնելը (ՍԻՍ.222), այդպիսի մեծ դաւաճանութիւն գրգռելու պատճառ չէր կրնար ըլլալ։ Անեցիին շարունակողը Պիլարղուի կը վերագրէ Հայերը խորամանկութեամբ` եթէ ի խորհուրդ են կոչած ըլլալու դաւաճանութիւնը, և կը յաւելու, թէ երբ Հայերը հասան՝ յորժամ ի վերայ և եկան զամենեսեան։ Իսկ թշնամութեան պատճառ կը ցուցնէ թէ կոմս զԿեսեիս յետս յանցանելու (ՍԱՄ.156)։ Դարդէլ ալ Անարզաբան գրաւելու նպատակը մէջտեղ կը դնէ, բայց ոչ թէ Հայերը առ ինքն կոչելով, այլ մատուկներու մէջ հարիւր զինեալներ դնելով, և մատուկները իբրեւ ընծայ ներս մացնելով, բերդին մէջ սպանուած կ'ըսէ Հայերը (ԴԱՐ.24)։ Մեր տեսութեամբ Թաթար զօրավարը բարեկամ թագաւորութիւն մը ջնջելու նպատակ չէր կրնար ունենալ, իսկ Դարդէլի գրած ձեւը պարզ զրոյց մը կ'երեւի, որուն վրայ ուրիշներ ակնարկ չունին։ Այդ չփոթ տեղեկութեանց վրայ Չամչեան, Պիլարղուն յաշխարհն օրացեալ կ'ըսէ, առանց ծագումը պարզելու, և վերջէն գրգռուիլը Սսոյ կանոններուն պատճառով առաքելական աւանդութեանց և հայրենաց օրինաց քսութեան կը վերագրէ (ՉԱՄ.Գ.311) և Չամչեանն ալ Հայերը Պիլարղուի մօտ խնճոյքի գացած կ'ընդունի (ՉԱՄ.Գ.257), մինչ Տէրմիքէլեան այդ տեսակ մեկնութիւնը բոլորովին թելադրութիւն կը կարծէ (ՍԱՏ.299)։ Մենք դժուարութիւն պիտի չզգանք ընդունիլ, թէ կրօնական վէճեր և կրօնամոլ միաբանութեան խիղճեր կրնան ամէնէն ծանր ձեռնարկներու դիմել, և անկէ չափել Սսոյ կանոններու դէմ Հայ խիղճերու մէջ զգացուած զայրոյթը։ Պիլարղուն Հեթումի և Լեւոնի դէմ գրգռողներ եղան միայն օմանք, անձնականատելութիւն խառնելով գործին, զի անոնց երկուքին սպանութիւնը կնճիռը վերջնականապէս չէր կրնար ջնջել, քանի որ Կեսարացին տակաւին կաթողիկոս կը մնար, և Հեթումի ու Լեւոնի կը յաջորդէին Օշին ու Ալինախ։ Հետեւաբար չկրնալով վերջապէս փարատել այդ չարագուշակ գործողութիւնը պատող քօղը, պիտի գոհանանք ընդունիլ, թէ Պիլարղու նենգութեամբ իրեն մօտ հրաւիրեց Լեւոն թագաւորը և Հեթում թագաւորահայրը` իրենց իշխաններով, և անոնց հասնելուն անխնայ սպաննել տուաւ երկուքը, ու 40 հոգի ալ մէկտեղ եկող իշխաններէն։ Սպանութիւնը կատարուած է ի տօնի Անարգաբայ դղեկին, 1307 նոյեմբեր 17'ին (ՀԵԹ. 86), որ այն տարի Ցիմնա-

կաց բարեկենդանին նախընթաց ուրբաթն էր, թէպէտ Յայսմաւուրքը նոյեմբե՛ր 16'ին կը դնէ (ՅԱՍ. Բ. 240)։ Սսոյ ժողովէն միայն 8 ամիս անցած էր։

1248. Հեթումի եղերական մահը, եթէ երբեք նախանձայոյզ Հայերու դրգռութեամբ

**ՀԵԹՈՒՄԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ**

եղաւ, պէտք կ'ըլլայ ցաւիլ որ զոհ գնաց իւր մոլեռանդ լատինասիրութեան, որով ոչ մի օգուտ կրցաւ պատրաստել իրեններուն, այլ մանաւանդ խանգարեց ազգային եկեղեցին, վտանգեց ազգային թագաւորութիւնը, և իրեն ալ օգուտ մը չպատրաստեց։ Իրաւ հոգեւորութեան նուիրուած անձ մը կ'երեւար, բայց իւր հոգեւորութիւնն ալ առեղծուածային զգացում մըն էր, քանի որ ոչ աշխարհքէ կը հեռանար, և ոչ իշխանութենէ ձեռք կը քաշէր, կրօնաւորի սքեմով արքունիք կը նստէր, և կրօնաւորական գօտիէն պատերազմողի սուրը կը կախէր։ Լատիններ զինքն Երանելի (Beatus) աստիճանով պատուած են, որ Յարգելի (Venerabilis) աստիճանէն վեր և Սուրբ (Sanctus) աստիճանէն վար, սրբութեան միջին աստիճան կընկատուի լատինական ծիսակատարութեան օրէնքով։ Իբր անոր չփոթ կացութեան նշանակ՝ նկարներու մէջ կրօնաւորական սքեմին վրայ արքունական կնգմնին կ'աւելցնեն (ՀԱՅ. 516), և կրօնաւորի մը ձեռքը սուր ու նիզակ տալով (ՀԱՅ. Բ. 520), անոր տարօրինակ և առեղծուածային կեանքը կը պատկերացնեն։ Իրաւ ալ ոչ թէ կեանքովը, այլ և զգացումներովը տարօրինակ անձնաւորութիւն կը ներկայանայ Հեթում-Յովհաննէս, անթագ թագաւորը, կրօնաւոր թագաւորահայրը, և առանց վանքի վանականը։ Անոր չ կը թուի թէ քաղաքական նպատակն էր զինքն ոգեւորողը, որով Լատինաց միաբանութենէն զինուորական օժանդակութիւն կը սպասէր, թէ ոչ եկեղեցական նպատակն էր, որ բոլոր եկեղեցիներու հետ միութեան բարիքը կ'երազէր, կամ թէ պարզ հոգեւորական նպատակ մըն էր, որով հռոմէական դաւանութեան մէջ յաւիտենական փրկութիւն կը սպասէր։ Հնար չէ որոշակի բան մը քաղել իւր գործերէն և իւր ընթացքէն, որովհետեւ իւր գործերը՝ այս նպատակներէն և ոչ մէկուն բոլորապէս ուղղուած կը տեսնուին, այլ խառնուրդ մըն են ամէն տեսակ, նոյն իսկ իրարու անյարիր դիտումներու։ Ուստի կը միտինք ըսել, թէ վարանոտ միտք մըն էր՝ որ զայն կը ներշնչէր, ոչ մէկ կէտի վրայ հաստատապէս կը կանգնէր, այլ յարափոփոխ կը ձգտէր ուր որ առժամապէս նշոյլ մը կը տեսնէր։ Այլ ոչ մի ուղղութեան տիրապէս չէր ծառայեր։ Իրմէ մնացած միակ գրաւոր յիշատակ, աստուածաշունչի մը ինքնագիր յիշատակարանը կայ (ՀԱՅ. 517-520), որ զգայուն բարեպաշտութեան հետ եռանդուն ազգասիրութեան արձագանգներ ունի։ Միւս կողմէն արքունիքը ձգելով վանք քաշուիլն ալ իւր նշանակութիւնը կը կորսնցնէ, երբ թագին հետամուտ եղբայրները կ'աքսորէ և թագաւորութեան անունը անչափահաս տղու մը յանձնելով, գործը իրեն կը պահէ (§ 1214)։ Շատ աւելի մեծ մարդ պիտի ըլլար նա, եթէ Հեթում Բ թագաւոր մնար, և կատարելապէս իւր արքունական և պետական պարտաւորութեանց հետեւէր, և լատին կրօնաւոր Եղբայր Յովհաննէս եղած չըլլար։ Լեւոն Բ թագաւորին գալով, շատ բան չունինք ըսելիք։ Անունը իբրեւ թագաւոր յիշուեցաւ, և նշանաւոր գործերու կցուեցաւ, բայց անձնական արդիւնք և արժանիք չկրցաւ ունենալ, և 12 տարեկան անգիտակից կերպով գահ բարձրանալէ ետքը, առանց կրօնաւոր հօրեղբօրը ազդեցութենէն ազատելու, 18 տարեկան եղերական մահուամբ վախճանեցաւ։

1249. Ոմանք կը պատմեն թէ Հեթումի եղբայր և Լեւոնի հօրեղբայր Օշինն ալ

**ՕՇԻՆ ԵՒ ԱԼԻՆԱԽ**

միւս իշխաններուն հետ Պիլարղուի ձեռքը ինկած, և զօրավարի մը պաշտպանութեամբ ազատած ըլլայ (ՍԻՍ. 550)։ Բայց հաւանականագոյն կ'երեւի ուրիշի պատմածը, թէ Հեթում ու տարաւ ընդ իւր զեղբայրն իւր զՕշինն, ինչ որ է խնամոցն Աստուծոյ յաջողութիւն մը եղաւ։ Վասնզի Օշին, եղելութիւնը իմացածին պէս, իսկոյն Կապանի բերդէն ելն ի բերդն Սսոյ, և Հայ իշխաններուն ու անոնց գունդերուն գլուխն անցնելով, Պիլարղուի վրայ յարձակեցաւ, որ չկրցաւ դէմ դնել և պարտաւորուեցաւ Անարզաբայէ ու Կիլիկիայէ հեռա-

նալ։ Օշին անտէրունջ թագաւորութեան տէր կանգնեցաւ և Կիլիկիոյ կառավարութիւնը ստանձնեց, բայց թագաւոր հռչակուիլն ու օծուիլը յետաձգեց (ՍԱՄ. 156)։ Միջադէպը կրնար ծանր հետեւանքներ ունենալ, և Հայերու ու Թաթարներու մէջ եղող բարեկամ յարաբերութիւնները եղծանել, ինչ որ Հայերուն վրայ փորձանքներ ալ կրնար հրաւիրել, քանի որ Եգիպտացիներէն նեղուած ու Լատիններէն լքուած էին։ Ուստի կացութիւնը պարզելու համար, երբ Օշին զօրութեամբ կը գործէր, եղբայրը Ալինախ կը չտապէր Դավրէժ՝ մեծ խանին առջեւ իրողութիւնը լուսաբանելու, և վտանգին առջեւն առնելու համար։ Պատգամաւորութիւնը յաջող ելք ունեցաւ, զի Ալինախ կրցաւ հաստատել Պիլարղուի նենգութիւնը բարեկամ Հայերու դէմ, և կ'արդարացնէր Հայերու ինքնապաշտպանութեան իրաւունքը Պիլարղուի դէմ, և Ղարփանթա կատարելապէս համոզուելով, Պիլարղուն մահուան կը դատապարտէր (ՍՄԲ. 127), մինչեւ իսկ Ալինախը կը ստիպէր իւր ձեռքով սպաննել իրենց թշնամին (ԴԱՐ. 26)։ Արդարութիւնը ամբողջութեամբ տեղը տանելու համար ալ, Ալինախի կը յանձնէր նաեւ «գինք անմեղացն» (ՍՄԲ. 127), որ է սպանեալներուն արեան գինը, իսլամական օրէնքին համեմատ։ Երբոր Ալինախ յաջողութեամբ կը դառնար, և ամէն վախ ու կասկած կը փարատուէր, այն ատեն միայն Օշին թագաւորական օծում կ'ընդունէր Կեսարացիին ձեռքէն, և Կիլիկիոյ պետութեան տէրը կը դառնար։ Հանդէսը կը կատարուէր Տարսոնի մէջ 1308'ին (ՍՄԲ. 127), և թէպէտ օրը նշանակուած չէ, սակայն տարւոյն առջի ամիսները պէտք է դնել, որովհետեւ Ալինախի պատգամաւորութիւնը հազիւ երկու ամսուան մէջ կրնար վերջանալ, և հանդէսը կատարուիլ մեծապահքէ առաջ, քանի որ նոյն տարին փետրուար 25'ին կ'իյնար Բուն Բարեկենդանը։ Դարդէլ կը կարծէ թէ թագաւորութիւնը Ալինախի կ'իյնար, և անոր «տէր Կոռիկոսին» և «եղբաւրն» մեռնելովը թագաւորեց Օշին, որ «եօթներորդն», այսինքն կրտսերագոյնն էր իւր եղբայրներուն մէջ, զորս Հեթումի որդիներ կը կոչէ չփոթութեամբ, փոխանակ Լեւոն Գ'ի որդիներ ըսելու (ԴԱՐ. 26)։ Սակայն Դարդէլ այդ պարագաներուն մէջ ալ կը սխալի, որովհետեւ Ալինախ ներկայ եղած է Ատանայի ժողովին Օշին թագաւորի հետ (ԿԱԼ. 504), և մահն ալ շատ տարիներ ետքը տեղի ունեցած է, 1317'ին (ՍԱՄ. 156)։ Օշին և Ալինախ երկուորեակներ ծնած են 1283'ին (ՍԻՍ. 556), բայց երկուորեակներու մէջ ալ առաջնութիւն կը ճշդուի, և այս կերպով նախադասուած է Օշին իւր եղբօրը վրայ, և 25 տարեկան թագաւոր օծուած։

1250. Օշին կրօնական գործերու մէջ կատարելապէս իւր եղբօրը Հեթում-Յովհաննէսին հետեւողն էր, և թերեւս անկէ աւելի

ՕՇԻՆԻ ԸՆԹԱՑՔԸ

բուռն ու մոլեռանդ, իւր տարիքին և բնաւորութեան բերմամբ։ Զինքն աւելի գրգռելու պատրաստ էր Կոստանդին Կեսարացին, նա ալ Անաւարզեցիէն աւելի իւր գործերուն մէջ խիզախ, քանի որ կը կարծէր թէ Նորութիւնները ոչ եւս ծրագիր մնացած, այլ Սսոյ ժողովով կանոնի ոյժ ստացած էին, և թէ իբր պարտաւորիչ կրնար ստիպել իւր ժողովուրդը անոնց համակերպիլ։ Սակայն ժողովուրդը ու եկեղեցականութիւնը չունէր այն լատինասէր զգացումը, զոր կաթողիկոս ու թագաւոր ձեռք ձեռքի տուած կ'աշխատէին տարածել, և Կալանոսի պատմագիրն ալ կը խոստովանի, թէ «ոչ էին հերձուածողք, ամէնք հա-ւատային նոյն կանոնին, և այնպէս խաւսէին զեր-կուբնութիւն, մինչ զի կրկին անգամ լուծեալ լինէր միաբանութիւնն այն» (ԿԱԼ. 472)։ Հոգ չէ թէ նա հակառակողները «հերձուածող» կոչէ իւր միտքով, մեզի բաւական է որ խոստովանի թէ «լուծեալ եղև միաբանութիւնն այն», որ ուրիշ բացատրութեամբ կը նշանակէ, թէ Սսոյ ժողովին մէջ հաստատուած համէջադաւանութիւնը, արդիւնք և գործադրութիւն չունեցաւ և չեղեալ նկատուեցաւ։ Արդ եթէ այս էր հետեւանքը, ապա հակառակողները միայն «ամէնք» չէին, այլ ընդհանուր էր դիմադրութիւնը։ Եւ այն ոչ միայն անհատական կերպով և կամ խօսքով, այլ յայտնի ցոյցերով և բուռն դիմադրութեամբ։ Զի ժողովուրդը և եկեղեցականները Կոստանդինի և Օշինի բռնած կերպերէն զայրացած, ձայն տուին իրարու, և հաւաքուեցան Ատանայի մէջ 1308'ին, և մերժեցին Սսոյ ժողովին

*նորութիւնները ժողովական ձեռնհասու-թեամբ։ Թագաւոր և կաթողիկոս չուզեցին նշանակութիւն տալ բողոքին և իրենց ըն-թացքը շարունակեցին, և այս անգամ բո-ղոքը աւելի ուժգնութեամբ կրկնուեցաւ Սի-սի մէջ 1309 տարին* (ՍԱՄ. 156), *որ ժողո-վեցան եպիսկոպոսունք աբեղայից և կրօնաւորաց և աշխարհականաց, այլ և վարդապետք և եպիսկոպոսք և եպիսկոպոսունք ժողովրդոց, արանց և կանանց, ծերք և տղայք։ Հաւաքուած բազմութիւնը կը բողոքէր և կը գոչէր, վասն ոչ առնելոյ յանձն արկանել ջուր ի սուրբ խորհուրդն, և վասն այլ եւս նորաձեւ օրինացն* (ՍԱՄ. 156)։ *Մասնաւոր ակնարկներէ կը քաղուի, թէ ոչ միայն ժո-ղովրդականք եպիսկոպոսաց յարուցին և աղմուկ շփոթման արկին* (ԿԱԼ. 474), *այլ և եկեղեցա-կաններ ժողովական նիստ կազմեցին, հար-կաւ առանց կաթողիկոսի, կանանեցին կա-նանս և քրեցին սանձանս, գլխաւորապէս պնդե-լով յերեսս յայտնի ոչ առնել հաղորդութեան ընդ այլ եւս քրիստոնէիցն, որք են, բաժակին ջու-րը, Ծնունդին տօնը, և երկու բնութեան բա-նաձեւը* (ԿԱԼ. 476)։ *Մենք ալ չենք ուզեր կանոնական ժողովի զօրութիւն տալ յիշեալ գործողութեան, սակայն անուրանալի է ազ-գային խիղճին բողոքին նշանակութիւնը, և հայադաւան ժողովուրդին ինքնապաշտպա-նութեան ազդեցութիւնը։*

1251. *Այդ ցոյցերը կը ցնցեն կաթողի-կոսն ու թագաւորը, որք իրարու հետ հաղորդակցութեամբ, և իշ-խաններէն իրենց համա-միտներն ալ թիկունք ու-նելով, բուռն զօրութեամբ կ'ուզեն զսպել ժողովուրդին ձայնը։ Կ'երեւի թէ զինուորական ոյժ ալ գործածուած է հաւաքուած և ցուցարար ժողովուրդին դէմ, որովհետեւ գրուած է թէ Օշին եղան յարանցն և ի կանանցն զթագաւորն, որ աւելի զինուորա-կան շարժումներու հետեւանք կը կարծուի, քան թէ հրամանով եղած մահապատու-թիւններ, մինչեւ կիներու վրայ տարած-ուած։ Շարժումին գլուխները, այսինքն զմարդագլխեալն, կոչեալ եկեալ ի բանս ի բերդն, ի... սպանեալ եւ ի ներս, և առաքեաց յաքսոր ի Կիպրոս կղզին, ուր թագաւորած էր Օշինի քե-ռայրը Ամալրի, իր Հենրիկոս եղբայրը գա-հէն վտարելով, և Կիլիկիա ղրկելով Օշինի*

**ՕՇԻՆԻ ՀԱՆՔԵՐԸ**

*պահպանութեան էր յանձնած։ Այս կերպով Ամալրի ալ Օշինի հակառակորդ եկեղեցա-կանները պահած պիտի ըլլար, անկէ գտած օգնութեան փոխարէն։ Այսպէս վերջացաւ Սսոյ ցուցարար հաւաքումը, որ չկրցաւ ի-րաւ Կոստանդինն ու Օշինը իրենց ճամբէն ետ կեցնել, բայց բաւական եղաւ չէջնել հայադաւան ուղղութեան և հնաւանդ սո-վորութեանց անխախտ պահպանութիւնը։ Սսոյ 1307'ի կանոնները հազիւ թէ Սսոյ ար-քունիքին մէջ գործադրուած մնացին, և գրեթէ բոլոր Կիլիկիա իւր հայերուն չաւի-ղին վրայ կը քալէր, իսկ Հայաստան և ոչ իսկ կարեւորութիւն կ'ընծայէր հռչակուած նորութեանց։ Պատմութիւնը կը վկայէ, թէ աքսորեալներէն բազումք անդէն մեռան Կիպ-րոսի մէջ* (ՍԱՄ. 156), *հարկաւ նեղութեանց ալ ենթարկուած ըլլալով։ Անշուշտ միեւնոյն վախճանն ունեցան Կիլիկիոյ մէջ բանտարկ-ուած վարդապետներն ալ, որոնցմէ քանի-ները Օշին մատնեաց բազում ի մահ, նոյն իսկ հա-մէջադաւաններու խոստովանութեամբ* (ԶԱՄ. Գ.312)։ *Այդ ազեղ եղելութիւնները, զորս համէջադաւաններն ալ չեն համարձակիր ու-րանալ, շատ պերճախօս կերպով կը դատա-պարտեն Կոստանդինի և Օշինի բռնած ըն-թացքը, և ի դէպ է անձերէն ալ բարձրանա-լով, դատապարտութիւնը տարածել նոյն իսկ դրութեան վրայ։ Թէպէտ համէջականներուն աչքին շատ ազեղ չերեւին Սիսի մէջ կա-տարուած բռնութիւնները, քանի որ իրենք աւելի մեծ ու եղեռնագործ բռնութիւններ ունին Արեւմուտքի մէջ կատարուած՝ հաւա-տաքննական ատեաններուն ձեռքով։ Սա-կայն մենք չենք կրնար իրենց ձայնակից ըլ-լալ, ու բացարձակ կերպով կը մերժենք կատարուած բռնութիւնները։ Անկէ ալ ա-ւելի կարեւոր է դիտել տալ, թէ այս գոր-ծերով բնաւ չհաստատուիր Հայ եկեղեցւոյ հայադաւանութենէ հեռանալը ու համէջա-դաւանութեան դառնալը, քանի որ Սսոյ կանոններ ոչ թէ ոմանց, այլ հանրութեան կողմէն կը մերժուէին, և նոյն իսկ համէջա-կանք կը խոստովանին, թէ ոչ եթէ յաղագս ժողովոց իշխեաց այնուհետեւ պահել ինչ զկանոնս Սսոյ, այլ միայն նոքա՝ որք էին ի կաթողիկոսարանի և յարքունիս* (ԶԱՄ.Գ.313)։ *Իսկ թագաւորի մը և կաթողիկոսի մը անհատական գործե-*

րը, եկեղեցւոյ լրումը չէին ներկայացներ երբեք։

**ԺԱՄԱՆԱԿԻՆ ԴԷՊՔԵՐԸ**

1252. Ներքին և արտաքին յուզումներու ալեկոծ միջոց մըն է Կեսարացիին կաթողիկոսութեան և Օշինի թագաւորութեան ժամանակը։ Որչափ արտաքին վտանգներ կը շատնան, այնչափ աւելի երկուքն ալ լատինութեան կը փարին, և որչափ աւելի լատինութեան կը փարին, այնչափ աւելի ներքին յուզմունքները կը շատցնե՛ն և երկիրը արտաքին վտանգներու կ'ենթարկեն։ Օշին շարունակ դեսպանութիւններ կը ղրկէր պապին՝ որ էր Կղեմէս Ե, և Անգղիոյ թագաւորին որ էր Եդուարդ Բ, բայց պապէն իբր օգնութիւն վերջ Փրանկիսկեան կրօնաւորներ միայն կ'ընդունէր 1311'ին (ՍԻՍ. 557), խորհրդատու ըլլալու, պետական գործերու առաջնորդելու, կամ լաւ եւս լատինամոլութիւնը ամրացնելու. իսկ Անգղիայէ լոկ յուսադիր նամակներ՝ երեւակայեալ օգնութեանց մասին։ Լատինաց միաբանութեան հետեւանքներ էին նաեւ աշխարհականներուն առեւտրական նպատակով Իտալիա գաղթելը, և եկեղեցականներուն Իտալիոյ մէջ հայածէս եկեղեցիներ և վանքեր հիմնելու ձեռնարկները, որոնց մէջ յառաջընթաց կը սեպուի Մարտիրոս Սեւալեռնեցի վարդապետ մը որ Գենուա (Genova) կ'երթայ 1307'ին, և 1309'ին պապէն հաւանութիւն կը ստանայ Ս. Բարթողիմէոսի եկեղեցին շինելու։ Իրեն կը հետեւի Դաւիթ Կիլիկեցի վարդապետ մը որ 1308'ին կը հիմնարկէ Պատաւիոն (Padova) քաղաքին մէջ Հայոց վանք մը։ Ներքին դիպուածներէն յիշատակելի է Օշինի երիցագոյն եղբօր և նախկին թագաւոր Սմբատի՝ Կոստանդնուպոլսոյ աքսորանքէն ազատելով (§ 1213), 1309'ին Կիլիկիա գալը թագաւորութիւնը նորէն ձեռք ձգելու համար։ Սակայն Սմբատ կուսակիցներ չգտներ, և շուտով ետ կը դառնայ, և թափառական կեանքը կը կնքէ Եւբէա (Negroponte) կղզին, մարտի 6'ին, բայց տարին անորոշ (ՀԱՑ.543), զոր անյարմար չէր ըլլար 1311'ին դնել։ Սմբատի հետ աքսորուող Կոստանդին եղբայրն ալ ազատութիւն գտած էր Հեթումի մահուընէն ետքը, սակայն նա Կոստանդնուպոլսոյ մէջ վախճանած է մարտ 8'ին, տարին նոյնպէս անորոշ (ՀԱՑ.543), բայց Օշինի սեփական Ցայսմաւուրքին մէջ նշանակուած ըլլալը կը ցուցնէ, թէ այդ տարիներուն մէկուն կամ միւսին մէջ եղած է երկուքին ալ մահը, որով Օշին ապահովուած է իր գահին և թագին վրայ։ Եթէ մրցակից եղբայրներուն մահը զինքը գոհացուց, Կիպրոսի թագաւոր Ամաւրիի սպանութիւնը 1310'ին զինքը մտահոգ կ'ընէր։ Հենրիկոս Բ որ նորէն գահը կը գրաւէր, իրեն շատ համակիր չէր, և ոչ ալ Հայոց արքունի գերդաստանին բարեկամ, որով Զապլուն ալ, Ամաւրի Լուսինեանի այրին իր հինգ զաւակներով կը ստիպուէր Կիպրոսը թողուլ և Կիլիկիա ապաւինիլ։ Այդ հինգ զաւակներն էին (ԴԱՐ.27), Հուգոն կամ Հիւգ, Հենրիկոս կամ Հանրի, Գուիտոն կամ Գուի, Յովհաննէս կամ Ջիւան, և Բոյեմոնդոս կամ Պէմունդ (Hugues, Henri, Guy, Jean, Boemond), որոնք առաջիկային Հայոց արքունական գերդաստանը կազմեցին։ Միեւնոյն 1310 տարին էր որ Օշին արու զաւակ մը կ'ունենար, ապրիլ 26'ին, զոր Լեւոն կը կոչէր, սակայն մայրը Զապէլ, Կոռիկոսի իշխան և կրօնաւոր-պատմիչ Հեթումի դուստրը, երկունքի հետեւութեամբ քանի մը օրէն կը մեռնէր մայիսի սկիզբը։ Ժամանակին նկարագիրը լրացնելու համար յիշենք նաեւ անակնկալ ասպատակ մը Թաթարներու կողմէն 1314'ին, և Եգիպտացւոց արշաւանքները 1315'ին Մելիտինէ և 1316'ին Տարանտիա քաղաքներուն վրայ, և Հայերու կրած չարաչար կոտորածները (ՍԻՍ. 558), որոնք եւսքանզեւս կը զայրացնէին ներքին անախորժ կացութիւնը, տարբեր հոսանքներուն, և թագաւորին ու կաթողիկոսին տարօրինակ ուղղութեան և բուռն ընթացքին հետեւանքով։

**ԱՏԱՆԱՅԻ ԺՈՂՈՎԸ**

1253. Այդչափ խառնակութեանց մէջ, զորս քաղելով պատմեցինք, որպէսզի կացութեան ճիշդ նկարագիրը տուած ըլլանք, պէտք է դիտել տալ, որ թագաւոր ու կաթողիկոս շատ պարտաւոր էին աւելի կարեւոր և օգտակար գործունէութեան մը հետեւիլ, քան թէ իրենց լատինամոլ ծրա

գիրին գործադրութեան համար ճիգեր թափել։ Զարմանալու կէտ մըն է, որ Օշին թագաւոր այդչափ յուզմանց ու շփոթութեանց մէջ յանձն կ'առնէ անձամբ Հայաստան երթալ, ներքին գաւառներու մէջ պտոյտ մը ընել, իւր մտադրութիւնը դարձնելով աւելի Տարօնի և Աղձնիքի եպիսկոպոսներու վրայ, և Բաղէշի մէջ գումարում մըն ալ կը կազմէ, որպէս զի անոնք համոզէ Լատիններու հետ համաձայնութենէն յառաջ գալիք օգուտներուն վրայ (ՁԱՄ․Գ․312)։ Սակայն յաջողութիւն չի գտներ, և կը հաւանի որ ազգային ժողով մը գումարուի, ուր վերստին քննութեան ենթարկուին 1307 տարւոյ կանոնները, որոնց առանց կաթողիկոսի հաստատուած ըլլալն ալ անշուշտ նկատի կ'առնուէր։ Արդ այս յանձնառութիւնը, որով կ'ընդունուէր համեմատականաց խոստովանութեամբ իսկ, զի վերոյին լիցի քըննութիւն ի վերայ կանոնաց ժողովոյն Սսոյ, և որոշեսցի թէ զինչ պարտ իցէ առնել (ՁԱՄ․Գ․312), անգամ մը ևս կ'ապացուցանէ, որ Սսոյ ժողովը, եթէ որևէ ոյժ մըն ալ ունէր, անիկայ ալ բոլորովին ջնջուեցաւ, երբ թագաւորը, հարկաւ կաթողիկոսին հետ համաձայնութեամբ, յանձնառու եղաւ անոնք նոր քննութեան ենթարկել, և նոր կանոններ հաստատել։ Օշին շրջագայութենէ դառնալով իւր յանձնառութիւնը գործադրելու կ'աշխատէր, երբ պապութեան կողմէն ալ նոր գրգիռ մը զինքն աւելի քաջալերեց։ Կղեմէս Ե մեռած էր 1314'ին, և հազիւ 1316'ին յաջորդած էր իրեն Յովհաննէս ԻԲ, կամ ըստ այլոց ԻԱ, գործունեայ և եռանդոտ գաղղիացի մը, որ աթոռ հաստատեց Աւինիոն։ Օրէնսգիտութեան և բժշկութեան հմուտ, և գործառնութեանց մէջ ձեռներէց, ոչ միայն Արևմուտքի մէջ նշանաւոր եղած է իւր յանդուգն գործերով, այլ և Արևելքի վրայ աչք դարձուցած էր պապութեան ազդեցութիւնը ամրացնելու։ Կիլիկիոյ և նոյն իսկ արքունիքի և հայրապետանոցի մէջ գտնուող Լատին կրօնաւորներէ տեղեկանալով, Յովհաննէս կը գրէր Օշինի և Կոստանդինի (ԿԱԼ․517), որ ջանան ժողով գումարել և վերջնական կերպով ամրացնել 1307'ի կանոնները։ Այդ շարժառիթներով կը հրաւիրուի Ատանայի ժողովը։ Անոր գումարումը սովորաբար կը դրուի 1316'ին (ՄԽՍ․258), սակայն դժուար պիտի ըլլայ այդ թուականը ընդունիլ, քանի որ կը գիտցուի թէ ժողովը եղաւ Յովհաննէս ԻԲ պապին օրով (ԿԱԼ․517), որ ճիշդ միևնոյն 1316 տարւոյն մէջ երբ ընտրուեցաւ, և Այլակերպութեան տօնն ալ, որ օր գումարուած է Ատանայի ժողովը (ԿԱԼ․503), յուլիս 18'ին կ'իյնար, որով անհնար էր մէկ կամ երկու ամիսներու մէջ տեղի ունենային պապին յորդորական նամակները, ժողովին որոշումն ու հրաւէրը, և ժողովականներուն գումարուիլը, ուստի աւելի հաւանականութեամբ 1317 յուլիս 10'ին Այլակերպութեան տօնին պէտք է դնել Ատանայի ժողովը Սսոյ ժողովէն 10 տարի ետքը։

**ԺՈՂՈՎԻՆ ՆԵՐԿԱՆԵՐԸ**

**1254**. Լատիններէն և լատինասէրներէն խորհուած միջոցը, որ է նոր ժողովի գումարումը, գլխաւոր նպատակին ըստ համապատասխան չեղաւ, և չի կրցաւ արտադրել այն զօրութիւնը որուն կը սպասուէր։ Հրաւէրին անսացողները շատ քիչ եղան, վասն զի եպիսկոպոսներ 18 են եղած կաթողիկոսով մէկտեղ, և վարդապետներ 7 միայն յիշուած են ներկայից ցուցակին մէջ (ԿԱԼ․503), մինչ Սսոյ մէջ գումարուած էին 26 եպիսկոպոսներ և 17 վարդապետներ, նոյն իսկ առաջին ցուցակին համեմատ (§ 1230)։ Եպիսկոպոսներէն 10 հատ Կիլիկիայէն եղան, և անոնցմէ վեցը Սսոյ առաջին ցուցակին մէջ յիշուածներ, այսինքն Կոստանդին կաթողիկոս յառաջն Կեսարիոյ եպիսկոպոս, Կոստանդին Սսոյ, Յովհաննէս Տարսոնի, Յովհաննէս Անարզաբայ, Ստեփանոս Բարձրբերդի և Գրիգոր Մարաշի եպիսկոպոսներ, և հատ մըն ալ երկրորդ ցուցակէն՝ Ստեփանոս Ատանայի։ Կապանի եպիսկոպոսը Յակոբ է, որ Բասիլիոսի յաջորդած պիտի ըլլայ, և երկու նորեր կան Յովհաննէս Մամեստիոյ և Ներսէս Մոլևոնի։ Փոքր Ասիոյ եպիսկոպոսներէն երկու նորեր կան միայն Կոստանդին Անկիւրիոյ և Ստեփանոս Կոնիոյ։ Իսկ Հայաստանի եպիսկոպոսներէն կայ Աւետիք Նփրկերտի, որ երկրորդ ցուցակին մէջ յիշուած էր, և Կոստանդին Մարանդունեաց՝ որ Յովհաննէսի յաջորդը պիտի ըլլայ։ Երեք

ալ նորեր կան Յովհաննէս Տարօնոյ, Մարկոս Կարսի և Յակոբ Սալմաստի։ Իսկ 7 վարդապետներ բոլոր հիներ են, Յովհաննէս վարդապետը, Կիրակոս և Գրիգոր և Մարտիրոս կաթողիկոսարանէն, Գրիգոր Գերմագրերի և Բարսեղ Խորխնի, և Հայրապետ Թլուրքթիի՝ որ Գրիգորի յաջորդը պիտի ըլլայ։ Քռնեցին իւր նամակին մէջ իբրեւ ներկայ կը յիշէ նաեւ Զաքարիա Ծործորեցին՝ Արտազի արքեպիսկոպոսը (ԿԱԼ.517), և Յովհաննէս Երզնկացի կամ Ծործորեցի (ԿԱԼ.518) ծանօթ վարդապետը (§ 1240)։ Սակայն երկուքին ալ անունները ցուցակին մէջ չեն գտնուիր, և անհնար էր որ մոռցուէին, մինչ Քռնեցին վերջէն կը գրէ պարզ յիշողութեամբ։ Յովհաննէս վարդապետը՝ որ վարդապետաց առաջինը յիշուած է առանց մակդիր անունի (ԿԱԼ.504), ոչ թէ Երզնկացին է, այլ Սսոյ ցուցակին մէջ ալ վարդապետներու գլուխը յիշուած Մեծքարի դպրապետն է (ԿԱԼ.459), կամ Դպրեվանքի առաջնորդը, որ միշտ իւր առաջնութիւնը կը պահէ իբրեւ վարդապետանոցի գլուխ կամ վարդապետաց վարդապետ։ Գալով ներկայ իշխաններուն, անոնք ալ նուազ են, 10 միայն, մինչ 14 էին անունով յիշուածները Սսոյ մէջ։ Ասոնցմէ ալ գրեթէ բոլորը հիներն են, Օշին թագաւոր, Ալինախ արքայեղբայր, Սմբատ Ասկուռոյ մարաջախտ, Ռեմունդ Միքայելուի սենեսջալ, և Թորոս Զոփաէրկայի պրոքսիմոս։ Իսկ բերդակալներէն կան Սմբատ Սմբատկլայի, Օշին Կուպիտառի, և Լիկոս Խնձորովկիրի՝ որ նոյն ինք Կիտառաման է (ՍԽՍ.64)։ Նորեր երկու հատ են միայն Հեթում սպարապետ Օշինի տեղ, և թագաւորին աներձագը Օշին Կոռիկոսի իշխանը։ Բազմամբոխեան քահանայից և կրօնաւորաց այստեղ ալ յիշուած են՝ թագաւորին ուազերէց Թորոսի գլխաւորութեամբ (ԿԱԼ.505), որ Կոստանդինի յաջորդած պիտի ըլլայ (ԿԱԼ.460), և կը կարծենք, բայց չենք կրնար պնդել, թէ նոյն այն Թափրոնց մականուանեալ ճարտարերաժիշտն է, որ 1342 դեկտեմբեր 27՚ին վախճանած է (ՀԱՑ.545), ժողովէս 25 տարի ետքը։ Այս ամէն տեղեկութիւններ կը ցուցընեն թէ Ադանայի ժողովը՝ ներկայից թուով ու կարեւորութեամբ, Սսոյ ժողովէն չատ ետեւ կը մնայ, մինչ կողմէն ներկաներն ալ միեւնոյն իրենց ըրածը հաստատել ուզողներ են, այն ալ նուազ թուով և նուազագոյն ազդեցութեամբ։

**ԲԱԺԱԿԻՆ ՋՈՒՐԸ**

1255. Կալանոս պարծենցած է թէ Սսոյ ժողովին մէջ «ոչ ոք ի Լամբրոնացւոյն կամ ի Յովհաննու, կամ զհարց և իցէ այլ ոք, ենթադր ի նա» (ԿԱԼ.453), ինչ որ կարի տարակուսական է, քանի որ գործին գլուխը կը գտնուէր Հեթում թագաւորահայրը, կամ լաւ եւս լատին կրօնաւոր Եղբայր Յովհաննէսը (ԿԱԼ.475), որ հարկաւ զերծ չէր իւր միաբանակիցներուն ազդեցութենէն։ Բայց Ադանայի ժողովին համար այսպիսի ակնարկ մը ընելէ կը զգուշանայ, որովհետեւ Քռնեցին կը վկայէ թէ «ի Քաղաքացւոց այլոցին, այսինքն Դոմինիկեաններէն «մանաւանդ աշակերտացն ի գերագոյն գալըն Յովհաննու Իծ՚իորդէ, զոր օրոց կաթողիկոսն գումարեալ զամենայն եպիսկոպոսաց և վարդապետացն՝ ժողով արար» (ԿԱԼ.517)։ Ժողովական գործերը յառաջ բերուած են Կալանոսէ, հետեւելով նոյն բնագիրին ուսկից Անաւարզեցիին նամակը և Սսոյ ժողովին առենագրութիւնը առած է (ԿԱԼ.472)։ Պարունակութիւնք իրարմէ չեն տարբերիր, որովհետեւ նպատակն է կրկին անգամ հաստատութիւն տալ 1307՚ի ժողովին որոշումներուն, և Անաւարզեցիին Լեւոնի գրած նամակով ըրած առաջարկներուն։ Յայտնի բանաւ է թէ «լուր մանաւանդ լուրջ նոյն ի լուր արտե անդի Բանակարկսոյն, կանանցն կանանց և գրեցին սահմանս յանձկում ժողովս եւրենց» (ԿԱԼ.476), որով կ՚ուզեն ակնարկել 1307՚ի ժողովին դէմ Ադանայի և Սիսի մէջ ժողովական ձեւով տրուած որոշումներուն (§ 1250), որով մեծ նշանակութիւն տրուած կ՚ըլլայ այդ գումարումներուն, թէպէտ մենք ալ անոնց կանոնական զօրութիւն տալ չուզեցինք, բայց այս խօսքերով՝ այն առեն ազդեցութիւն ունեցած ըլլալնին կը յայտնուի։ Առաջին խնդիրը բաժակին ջուրն է, որուն մասին նորէն ընդարձակօրէն կը կրկնուին (ԿԱԼ.477—487) նոյն վկայութիւնները՝ զորս Անաւարզեցին յիշած էր Հեթումի և Լեւոնի գրած նամակներուն մէջ, և որոնք անցած էին Սսոյ ժողովին առենագրութեան (§ 1234)։ Այդ վկայութիւններ ոյժ մը չունին, քանի որ Յոյներ և Լատիններ են գը-

բողները, որ իրենց սովորութիւնը կը բացատրեն։ Իսկ Կոստանդնուպոլսոյ ժողովը որ ի Գմբեթայր պալատին եղեւ (ԿԱԼ. 485), Տրբուլեան կոչուած ժողովն է, ուրուն կանոնները Լատիններն ալ չեն ընդունիր։ Միայն չենք գիտեր թէ ինչ վկայութիւն է, զոր Տէրն Ներսէս արթողան կաթողիկոսն յերգոն ԿԲ տառիցն գրած ըլլայ, Յիսուսի կողէն ելած ջուրին մասին (ԿԱԼ. 483)։ Մեր գիտցածով Շնորհալին ջուրը միշտ Մկրտութեան խորհուրդին վրայ մեկնած է, թէ Կրկնավտակ կողին աղբերբ եկեղեցի էր հաստատի. Ջրովն մաքրի, արեամբն ըմպէ (ՇԱՐ. 285), թէ Աղբիւր բարեաց բղխեաց ի սուրբ կողէն, Ջուրն ի լուացումն ապաւինէն, արեանն յարբումն խորհրդին (ՁԱՓ. 126), և թէ Կոյսն աղբերցն կրկնակի, Ջուրն ի լուանալ մեղուցելոց, ի մահ սուր ձերբարելոց. արեանն ի անմահ մատուր հոգւոց (ՁԱՓ. 212)։ Չենք ուզեր հետևցնել, թէ մի՛ գուցէ բոլոր միւս վկայութիւններն ալ այդպէս խարդախուած կամ աղաւաղուած ըլլան։

**1256.** Ծննդեան տօնին վրայ, թէ Անուարզեցիին նամակները, և թէ Սսոյ ժողովը չատ չէին պատճառուած, բաւական սեպելով Աստուածայայտնութեան տօնին բաժանումը հրամայել, պահքն ալ ճրագալոյցն ալ կրկնելով, իսկ Ադանայի ժողովին մէջ ընդարձակ մաս մը կայ զայն պաշտպանելու (ԿԱԼ. 487—499), չատ մը քաչկոտուք պատճառաբանութիւններով, զորս քաղել իսկ աւելորդ կը սեպենք։ Պատմութիւն մըն ալ կը յօրինեն թէ Անաստաս պապին օրով, Հռոմ հրաման ղրկեր է Կոստանդնուպոլսոյ և Երուսաղէմի և Անտիոքի աթոռներուն որ Ծնունդը զատաբար տօնեն դեկտեմբեր 25'ին, և այն ատեն այդ պատրիարքութիւնները համակերպեր են։ Հայոց կաթողիկոս Մեծն Սահակի ալ նոյն հրամանը եկեր է, բայց նա նախարարներէն և Սուրմակէ ամբաստանուելով աքսորուած է եղեր, և անոր համար ի հաստատել հրովարտակին Սահակ աքսորեալ ըլլալուն, այսպէս պատճառաւ եա մնացեր է հաստատութեան Հայաստանեայց եկեղեցւոյ ընդ մեծ եկեղեցւոյն Հռոմայ ի պտղաբերութեան տօնիցս (ԿԱԼ. 496)։ Գտնէ ժամանակագրական կապակցութիւնը արդարանար, զի Անաստաս 401'ին մեռած է, և Սահակ 428'ին աքսորուած։ Բաւական բան ալ գրուած է երկու բնութիւն բանաձեւը պաշտպանելու (ԿԱԼ. 497—502)։ Հետզհետէ կը քաղուին տօնական և ծիսական զանազան նորութիւններ, որոնք Սսոյ մէջ ալ որոշուած էին (§ 1233), այսպէս են Աւետումը մարտ 25'ին, Ծնունդը դեկտեմբեր 25'ին, Մկրտութիւնը յունուար 6'ին, Տեառնընդառաջը փետրուար 2'ին, Վերափոխումը օգոստոս 15'ին, և Խաչվերացը սեպտեմբեր 14'ին տօնել, սրբոց տօները Յայսմաւուրքի թուականներով կատարել ու երկու բնութիւն բանաձեւը գործածել, պատարագի սեղանին վրայ գոգնոց դնել, ստորճանաւորներուն իրենց կարգն ու ըղգեստը ունենալ, Զատիկի և Ծնունդի և Մկրտութեան ճրագալոյցներուն ձէթով ու ձուկով բաւականանալ, և Սուրբ Աստուած'ին մէջ Քրիստոս աւելցնել (ԿԱԼ. 499)։ Ժողովական գրութեան վերջը նորէն կը յիշեն, թէ Սսոյ ժողովէն ետքը, սատանան յարոյց որոմանս փշեա և ընդդիմամարտս ճշմարտութեան, որոնք ծուղակ և կորուստ առնէին, և ժողովուրդը դարձուցանէին ի ճշմարտութենէ (ԿԱԼ. 502), իր հակառակութեամբ Սսոյ կանոններէն, և թէ այս նպատակով գումարուեցաւ Ադանայի ժողովը, Ս. Մինաս եկեղեցւոյ մէջ, Քրիստոսի յաւանաւորութեան այսինքն Պայծառակերպութեան տօնին օրը (ԿԱԼ. 503), որուն հաշիւը վերև ըրինք (§ 1253)։ Այդ հոգւով ու միտքով Ադանայի 18 եպիսկոպոսները կը համարձակին վճռել, թէ անոնք որ չեն հաւանիր իրենց վճիռներուն, ուրացեալ և ի բաց հերքեալ ի կաթողիկէ և առաքելական սուրբ եկեղեցւոյն Հռոմայ (ԿԱԼ. 506)։

**1257.** Եթէ պարզապէս Հռոմի եկեղեցիէն զատել ըլլար նպատակնին, բան մը չէինք ուզեր աւելցնել, որովհետև Հռոմայ եկեղեցիէն զատել, կաթողիկէ և առաքելական եկեղեցիէ զատել չէր ըլլար։ Սակայն լատինամիտ կաթողիկոսին ու թագաւորին և ակարամիտ 17 եպիսկոպոսներուն կամքը չատ անզօր էր Հայաստանեայց ուղղափառ եկեղեցւոյն հազարամեայ անփոփոխ դաւանութիւնն այ-

ՈՒՐԻՇ ՈՐՈՇՈՒՄՆԵՐ

ԺՈՂՈՎԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

լայնել, և անոր հնաւանդ ծէսը խախտել։ Ատանայի ժողովը քանի մը ժողովականներով հեղինակութիւն մը չէր կրնար ունենալ այդ մասին, և չունեցաւ ալ։ Արդէն ինքն Ատանայի ժողովը՝ Սսոյ ժողովին ապարդիւն և անհետեւանք լինելը յայտարարելէն ետքը, նովին իսկ իւր գործին ալ դատապարտութիւնը վճռած է, վասնզի հռոմէականներ իսկ կը խոստովանին թէ Ատանայի կանոններն ալ ոչ ուրեք եղան ի գործ, թէ նոյն իսկ 17 եպիսկոպոսներ անկարանային պահել, և թէ վերջապէս Օշին ալ յուսահատած և թէպէտեւ ինքն չէր ճար, դադարեցաւ ի պնդելոյ, Ատանայի կանոններուն պահպանութիւնը (ՉԱՄ. Գ. 314)։ Ահա այդ ժողովն է, որուն վրայ կը հիմնեն հռոմէականներ բոլոր իրենց փաստերը, իբր թէ Հայ եկեղեցին իւր ինքնութիւնը կորուսած և հռոմէադաւան եղած ըլլայ։ Հայ եկեղեցին իւր դարաւոր կեանքովը, իւր ուղղադաւան հայրապետներովը, իւր բազմաթիւ ժողովներովը, այնչափ յայտնի կերպով հռչակած ու պաշտպանած է իւր հաւատքն ու ծէսը, որ պետական ազդեցութեան և քաղաքական հրապուրանքներու ներքև լուռ բերնով հաւանող և գործով հակառակող 17 եպիսկոպոսներ չեն կրնար հակառակը հաստատելու փաստ ըլլալ։ Եթէ Օշին թագաւոր հռոմէադաւան մը եղած է ըսեն, ասիկայ մեր եկեղեցւոյն վրայ ազդեցութիւն չըներ, նոյնը կրնայինք ըսել Կոստանդին Կեսարացի կաթողիկոսին համար ալ, որովհետեւ Հայ եկեղեցին անսխալ պետեր ունենալ չվարդապետեր։ Սակայն երբ կը տեսնենք որ Կոստանդին չհակառակիր, երբ բոլոր Հայաստան ու Փոքր Ասիա, և նոյն իսկ Կիլիկիա՝ համարձակօրէն կը մերժեն նորութիւնները, պիտի համարձակինք հետեւցնել թէ անոր ըրածն ալ արտաքնայարդար կեղծիք մըն էր. և ոչ հաստատուն համոզում։ դատապարտելի իբրեւ փոքրոգի զիջողութիւն, և ոչ իբրեւ իսկական ուրացութիւն։

1258. Ատանայի ժողովին թուական նշանակուած տարին՝ որ է Քրիստոսի 1317 և Հայոց 766 տարին, տոմարական պարագայ մը կը ներկայէ, զոր չենք ուզեր անյիշատակ թողուլ։

**ՏԱՐԵԳԼՈՒԽՆԵՐ ՄԻԱՑԱԾ**

Հայոց շարժական տոմարի հիմ կազմող՝ վերջին Հայկայ շրջանին սկիզբը Յուլեան տոմարին 428 օգոստոս 11'ին հաստատուած էր (§ 211), կամ որ նոյն է նաւասարդի 1'ը յիշեալ օրը կ'իյնար, որ սակայն չորս տարին օր մը Յուլեան տոմարէն ետ մնալով, 552'ին տոմարի նորոգութեան տարին յուլիս 11'ին հասած էր (§ 385)։ Անկէ ասդին ալ կը շարունակէր չորս տարին օր մը ետեւ մնալու հաշիւը, որ հետեւանք էր Յուլեան տոմարին նահանջներուն Հայկական տոմարին մէջ ընդունուած չըլլալուն։ Սարկաւագ վարդապետ հոգացած էր նահանջները ընդունիլ նոր հինգհարիւրեակին սկիզբը (§ 900), սակայն անոր կազմած անշարժ տոմարը կատարեալ ընդհանրացում չէր առած և պաշտօնական կիրառութեան չէր մտած, և շարժական ու անշարժ տոմարներ խառն կերպով կը գործածուէին տարեթիւերու յիշատակութեանց մէջ, ինչպէս որ տեղ տեղ ակնարկելու ալ առիթ ունեցանք։ Միւս կողմէն երբոր Արեւմուտքի հետ յարաբերութիւններ շատցան, հայկական ամիսներու տեղ Յուլեան կամ Հռոմէական ամսաթիւերն ալ սկսան գործածուիլ, առանց Քրիստոսի տարեթիւն ալ ընդունելու, որ արդէն սովորական էր Արեւմուտքի մէջ, և այսպէս խառնակ տոմարականութիւն մը տիրած էր Հայոց մէջ, ամսաթիւը հռոմէական և տարեթիւը հայկական, այն ալ երբեմն շարժական և երբեմն անշարժ տոմարին հետեւելով։ Վերջին ատեններ հայկական շարժականը և հռոմէական անշարժը իրարու շատ մօտեցած էին, և 1260'էն ասդին շարժական ամանորն ալ յունուարի առաջին կէսին մէջ կ'իյնար, մինչեւ որ 1317'ին շարժական տոմարին ամանորը կամ Հայկական նաւասարդին մէկը՝ ճիշդուճիշդ Յուլեան յունուար մէկին իյնալ, և հայկական ու հռոմէական տարեգլուխները միացան։ Այդ զուգադիպութիւնը պատճառ եղաւ, որ այլեւս շարժական տարեթիւը և փոփոխական ամանորը գործածութենէ գրեթէ դադրեցան, և Յուլեան յունուար մէկը Հայկական տարեթիւին ալ ամանորը եղաւ, և կաղանդի օրն ու անունն ընդհանրապէս ընդունելի եղան, բայց միշտ հայկական տարեթիւը պահելով, զի արեւմուտքին գործածած Քրիստոսի տարեթիւը Հայերուն

գործածական չեղաւ, եթէ չուզենք ըսել, թէ անծանօթ ալ մնաց։ Այդ սովորութիւնը հաստատուն կերպով հասաւ մինչեւ վերջին ԺԹ դարը, մինչեւ մեզի մօտ օրերը, երբ այլեւս հռոմէական կամ արեւմտեան տարեբերթիւը սովորական դարձաւ Հայոց մէջ, և Հայոց թուականը երբեմն իբր զարդ և երբեմն իբր պարզ տեղեկութիւն սկսաւ յիշուիլ։ Աւելի նոր տարիներու մէջ հին չարժական տոմարի հաշիւն ալ վերակենդանութիւն առաւ, բայց իբրեւ հայրենական հընութեանց նշխարք մը միայն (ՑՇԿ. Ա.76), որ օրացոյցներէն անդին չանցաւ։ Երկու ամանորներու զուգադիպութեան օրէն իբրեւ կանոն դարձած է, ոչ եւս երկու տոմարներու համեմատութեան համար նկատի առնել՝ նահանջներու պակասութեանէն յառաջ եկող օրերը, այլ երկու տոմարներու մէջ 551 տարիներու անփոփոխ տարբերութիւն մը հաշուել։ Այս ձեւը կրնայ յարմարիլ 1317'է ետքը եկող տարիներուն, բայց անկէ առաջուան տարիներու պատշաճեցուած ատեն կրնայ տոմարական սխալներու առիթ ընծայել, ինչպէս չատերուն հանդիպած է։ Ուստի մենք սոյն պատմութեան կարգին խնամով մտադրութիւն դարձուցինք ամանորի օրերուն աստիճանաբար փոփոխութեան, և ջանացինք ճիշդ օրերու համեմատութիւն գտնել, հետեւելով ամբողջական չրջանի օրըստօրեայ փոփոխութիւնները ցուցնող աղիւսակի մը, զոր այս նպատակով կազմած էինք ժամանակին։

**1259.** Օշին թագաւոր այրի մնացած էր իւր անդրանիկին ծնած ատենէն (§ 1252), տակաւին 27 տարեկան եղած ատեն. բայց երկրորդ ամուսնութիւնը յապաղած էր, հարկաւ քաղաքական տեսակէտով օգտակար զուգակցութիւն մը հաստատելու նպատակով։ Վերջապէս Օշին իրեն կենակից ընտրեց զեղբօր դուստրն Ռէ Ռոպերտին, որ է Նէապոլսոյ Հռոբերտոս (Roberto re de Napoli) թագաւորին եղբօր, Տարենտոնի Փիլիպպոս (Filippo di Taranto) իշխանին դուստրը՝ Յովհաննա-Երինէ (Giovanna-Irene), զոր աղաքէլոց էջեր և պսակեցաւ ի Տարսոն։ Թուականը նշանակուած է 1316 (ՍՄԲ. 128), և բստ

ՅՈՎՀԱՆՆԱ ԵՒ ԱԼԻՆԱԽ

այս։ Ատանայի ժողովին գումարումէն քիչ առաջ կ'իյնայ Օշինի երկրորդ ամուսնութիւնը, երբոր տեղի կ'ունենային Յովհաննէս ԻԲ պապին հետ սերտ յարաբերութիւնները։ Օշինի ընտանեկան մխիթարութեան ցաւ մը կը յաջորդէր ժողովէն քիչ ետքը։ Իւր հարազատ և երկուորեակ եղբայրը Ալինախ, իշխան Տարսոնի և Լամբրոնի, որուն հետ միշտ սիրով ապրած էին, արկածի մը հետեւանօք կը մեռնէր 1317 օգոստոս 26'ին (ՀԱՑ. 545), թէպէտ Յայսմաւուրքը օգոստոս 2'ին կը դնէ (ՅԱՍ. Բ. 56)։ Ալինախ Տարսոնի Կիւդնոս գետին մէջ լողնալու իջած էր, իրեն հետ ունենալով փոքր ինչ մի, հարկաւ իւր անձնականը, որ եհար զնա տղամբն է Կլաւին, և հարուածը եղաւ պատճառ մահու (ՍԱՄ. 157), և այսպէս մեռաւ բարի շահնշահն Ալինախ երիտասարդ հասակաւ (ՀԱՑ. 545), զի 34 տարեկան էր տակաւին, և թաղուեցաւ Դրազարկի վանքը, արքունական գամբարանը։ Անցողակի յիշենք թէ Ալինախ, Ռուբէն անունով յիշուած է ուրիշներէն (ՍԱՄ. 212 և 243), կամ կրկին անուն ունենալուն, և կամ Ռուբէն բուն անունին փաղաքշական կոչում մը աւելցուած ըլլալուն համար։ Սմբատի շարունակողը 1309'ին կը դնէ Ալինախի մահը (ՍՄԲ. 128), սակայն յայտնի շփոթութեան պիտի վերագրուի, զի Ալինախ 1317 յուլիս 10'ին Ատանայի ժողովին ներկայ էր (ԿԱԼ. 504), և Ատանայէ Տարսոն դառնալէն ամիս մը ետքը տեղի ունեցած կ'ըլլայ արկածը։

**1260.** Այդ միջանկեալ պարագաներէ ետքը կը տեսնենք որ Օշին կը փութայ Ատանայի ժողովին արդիւնքը Յովհաննէս պապին ներկայել յատուկ դեսպաններու ձեռքով,

ԵՒՐՈՊԱՑԻՈՑ ԴԻՄՈՒՄՆԵՐ

որք են Յակոբ Կապանի եպիսկոպոսը, ժողովին ներկաներէն մին, և Ստեփանոս Նորբերդի իշխանը (ՍԻՍ. 558)։ Բայց միւս կողմէն Հռոմ լուր տուողներ կային, թէ այդ որոշումները գործադրուած չեն. և թէ որոնք որ հաւանութիւն յայտնած են, անոնք ալ առերես միայն համակերպած են։ Այդ պատճառով պապը հարցուփորձի կ'ենթարկէր Յակոբ եպիսկոպոսը, որ կը յաջողէր պապը համոզել ժողովական գրութեանց փաս-

տերով, և անկէ ալ գոհունակութեան պատասխանագիրներ առնելով իր տեղը կը դառնար։ Լատիններուն մօտենալնուն նպատակը զինուորական օգնութիւն ստանալն էր, իբր թէ Արեւմտեան քրիստոնէութեան հովանւոյն ներքեւ ապահով և տեւողական պիտի ըլլար Հայերուն թագաւորութիւնը, և այդ սեւեռեալ գաղափարին կը հետեւէին Կիլիկիոյ քաղաքական և եկեղեցական իշխանութեանց գլուխը գտնուողները հաւասարապէս։ Թէ Օշինի պատգամաւորները և թէ պապն ալ իր կողմէն դիմումներ կ'ընէին Տարենտոնի իշխանին՝ որ Օշինի աներն էր, Նէապոլսոյ թագաւորին՝ որ Յովհաննա թագուհւոյն հօրեղբայրն էր, և Գաղղիոյ Փիլիպպոս Ե թագաւորին, որ պապին հովանաւորն էր. սակայն ոչ ուստեք շարժում մը չէր կատարուեր, և Յովհաննէս պապ կը շատանար պատասխանել, թէ [illegible], ու կը խոստանար գունդ մը ճարել օգնութեան համար (ՁԱՄ.Գ.316), և կը փութար քանի մը Դոմինիկեան կրօնաւորներ ղրկել, լատին լեզուն սորվեցնելու (ՍԻՍ.367), հարկաւ լատին դաւանութիւնն ալ մէկտեղ։ Այս յարաբերութիւններ տեղի կ'ունենային 1318'ին։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱԹՈՌԸ**

**1261.** Երբոր մէկ կողմէն Ատոնայի ժողովին շնորհիւ սպասուած օգնութիւնները չէին հասներ, միւս կողմէն անոր պատճառով ծագած երկպառակութիւնները կ'ընդարձակուէին, և առնցմէ մէկն էր Երուսաղէմի աթոռին բաժնուիլը։ Հայերուն Երուսաղէմի մէջ վանք ու եկեղեցի ունենալուն սկիզբը մինչեւ Լուսաւորիչի ու Տրդատի օրերը կը հասնի (ԱՆԱ. 4), որոնք հետզհետէ շատցան, այնպէս որ Անաստաս վարդապետ, ութերորդ դարուն մէջ Պաղեստին գտնուող եօթանասունի չափ Հայոց վանքերու ցուցակ մը կրցած է կազմել (ԱՆԱ. 9)։ Եկեղեցւոյ հին սովորութեան համեմատ միեւնոյն աթոռի վրայ կրկին եպիսկոպոսներ չէին գտնուեր. դաւանութիւնը նոյն էր, և տարբեր ծէսով ալ նոյն եպիսկոպոսի կը հնազանդէին, հետեւաբար Հայերն ալ տեղական թեմակալին ներքեւ էին, և յատուկ Հայ թեմակալ չկար, թէպէտ կրնային վանքերու առաջնորդ եպիսկոպոսներ գտնուիլ։ Այդ պատճառով էր, որ մերթ ընդ մերթ Հայ վանականներ Յոյն թեմակալներէ նեղութիւն և հալածանք կը կրէին քաղկեդոնականութեան խնդիրին պատճառով։ Խաչիկ Արշարունիի համար ըսինք թէ սկսաւ Հայ գաղթականներուն Հայ եպիսկոպոսներ ղրկել (§ 785), բայց Երուսաղէմի Հայ եպիսկոպոսներ աւելի կանուխ ալ եղած պիտի ըլլան, վանքերու շատութեան և ուխտաւորներու յաճախութեան պատճառով։ Պատմութեան մէջ որոշակի յիշուած է թէ 637'ին, Օմէրի Երուսաղէմին տիրելու պարագային, Հայ պատրիարք մըն ալ յաղթականին ներկայացած է (ԲԱՌ. 29), և յատուկ հրովարտակով ճանչցուած է իբրեւ պետ Հայոց, կամ լաւ եւս Յոյներէն տարբեր դաւանութիւն ունեցող բոլոր արեւելեան քրիստոնեաներու (ԲԱՌ. 31)։ Օմէրի հրովարտակին մէջ կը գտնուի Աբրահամի անունը, պատրիարք կոչումով, թէպէտեւ այդ կոչումը Հայոց կողմէ ընդունուած չէր, զի կրնար հերձուածի նշանակութիւն տալ՝ իբրեւ Հայոց հայրապետութենէ բաժանեալ աթոռ, սակայն մահմետական պետութիւններ սովորութիւն ըրած են այդ անունով կոչել իրենց հպատակող քրիստոնէից եկեղեցական գլխաւոր պետերը։ Այս սովորութեան համաձայն էր Երուսաղէմի Հայ եպիսկոպոսներուն իբր պատրիարք ճանչցուիլը, և պատրիարք կոչուիլը մահմետական պետութեանց կողմէն։ Իսկ ազգային շրջանակի մէջ թէպէտ այդ անունը չունէին, բայց էին գլխաւոր պետ մը և գրեթէ կաթողիկոսական փոխանորդ մը Պաղեստինի և Ասորիքի մէջ՝ Եգիպտոսի սուլտանութեան հպատակ գաւառաց վրայ։ Երուսաղէմի մէջ գտնուած յիշատակներէն 21 անուններ քաղուած են Երուսաղէմի Հայ եպիսկոպոսներուն, որոնք պահած են աթոռին յաջորդութիւնը Է դարէն մինչեւ ԺԳ դարուն վերջերը (ԲԱՌ. 29—41), թէպէտեւ ցուցակը կատարեալ չէ, և ընդհատումներ ունի։ Լատիններու իշխանութեան ներքեւ ալ, որ 1099'էն մինչեւ 1187 Երուսաղէմի տիրեցին, Հայ եպիսկոպոսներու շարունակութիւնը պահուած կ'երեւի (ԲԱՌ. 36), բայց անոնց դիրքը աւելի բարձրացաւ Սալահէտտինի տիրապետութենէն ետքը, որ Լատինաց

թշնամի և Յոյներէ կասկածոտ, պէտք եղաւ համարձակութիւն տալ Հայերուն (ԲԱԹ. 38), քրիստոնէութեան թշնամի երեւցած չըլլալու համար։ Ռուբինեան թագաւորներ մասնաւոր մտադրութիւն դարձուցին Երուսաղէմի մէջ Հայոց դիրքը բարձրացնելու կալուածներով և հարուստ ընծաներով, որով նշանաւոր դիրք մը գրաւեցին Հայերը Երուսաղէմի մէջ։ Իրենց կեդրոնն եղաւ Ս. Յակոբ վանքը՝ Սիոնի բարձունքին վրայ, որ աւելի ճշդութեամբ Ս. Յակոբեանք կը կոչուի, Տեառնեղբայր և Գլխադիր Յակոբ առաքեալներու անունին միանգամայն նուիրուած ըլլալուն համար։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՊԱՏՐԻԱՐՔՆԵՐ**

**1262.** Ս. Յակոբեանց վանքին վարդապետները սկիզբէն իմեր նշանաւոր դեր մը ունեցած են Հայութեան համար, ոչ միայն Հայ եկեղեցւոյ անունը Յոյներու և Լատիններու հանդէպ պատշաճ պատւոյն վրայ պահելնուն, և Հայոց ստացութիւնները հաւատարմութեամբ պահպանելնուն, և հետզհետէ ընդարձակելնուն համար, այլև ամէն պարագայի մէջ Հայ Ուղղափառ եկեղեցւոյ և հայադաւան դրութեան ամուր պաշտպաններ եղած ըլլալնուն համար։ Թէպէտ Երուսաղէմ ալ օտար դաւանութեանց հետ շփման մէջ էր, սակայն երբեք անոնցմէ չազդուեցաւ օտարասիրութեան զգացումով, ընդհակառակն աւելի քաջալերուեցաւ իր հնաւանդ դաւանութիւնը և եկեղեցական ծէսն ու սովորութիւնները ամուր պահպանելու, մինչ հակառակը կը գործուէր Կիլիկիոյ մէջ։ Պատճառը յայտնի է։ Երուսաղէմի մէջ չի կար Արեւմտեայց օգնութեամբ քաղաքական շահեր պաշտպանելու տեսակէտը, որ Կիլիկեցւոց գայթակղեցուցիչ հրապոյրը եղաւ։ Երուսաղէմի աթոռը իր հաստատամտութիւնը ցուցուց ծռազատիկի առիթներուն ալ, և յաղթանակաւ պանծացուց իր դրութիւնը ճրագալոյցի լոյսին ցոլացումներովը (§ 1191)։ Կիլիկեցւոց ուղղութիւնը բնաւ արձագանգ չգտաւ Երուսաղէմի մէջ, և գործը իր գերագոյն նշանակութիւնը ստացաւ 1307'ի ժողովէն ետքը, երբ Սսոյ կանոնները հռչակուեցան։ Սարգիս էր այդ միջոցին Երուսաղէմի աթոռակալը։ 1281'էն աթոռ բարձրացած՝ Յակոբ Կլայեցիին օրով, ուղղամիտ և հաստատամիտ անձնաւորութիւն մը, ինչպէս իր գործերէն ալ յայտնուեցաւ։ Կոստանդին Կեսարացիի կաթողիկոսութեանը (§ 1246), և քիչ ետքը Օշինի թագաւորելովը, նոր զարկ տրուեցաւ Սսոյ կանոններուն (§ 1250), և յանձնարարութիւններ ու բռնադատութիւններ (§ 1251) մինչև Երուսաղէմ ալ հասան, սակայն Սարգիսի և իրեններուն համարձակ դիմադրութեան հանդիպեցան, որոնք բացարձակապէս մերժեցին այդ որոշմանց հպատակիլ, և Սսոյ աթոռին հետ ներքին յարաբերութիւնները խզեցին (ՁԱՄ.Գ.313)։ Այդ եղելութեան թուական դրուած է 1311 տարին, որուն կը համաձայնի Երուսաղէմի պատմագիրն ալ (ԱՍՏ.Ա.43)։ Սարգիս, որպէսզի կարենայ իր դիրքը ապահովել, յատուկ դիմում ըրաւ Եգիպտոսի սուլտանին, որ Նասըր-Մուհամմէտն էր վերստին գահ բարձրացած, և նոր հրովարտակով զինքն ճանչցնել տուաւ իբր ինքնագլուխ պատրիարք Հայոց և եկեղեցական պետ Հայերու և անոնց դաւանակից ուրիշ Արեւելցիներու, ինչ որ դժուար չէր, քանի որ Եգիպտացիք չէին կրնար բարեկամ ըլլալ Սիս նստող հայրապետին։ Այդ առթիւ Սարգիս սկսաւ պատրիարք անունը ազգային շրջանակի մէջ ալ գործածել, և կարմրագեղով կնիք դրոշմել (ԱՍՏ.Ա.201), և աւելի ընդարձակ իշխանութիւն վարել։

**ԱՌԱՋԻՆ ԳՈՐԾԵՐԸ**

**1263.** Սարգիսի գործը հերձուած մը չեղաւ, ինչպէս եղած էր Աղթամարի բաժնուիլը (§ 928), զի Սարգիս չառաւ կաթողիկոս անունը, և ոչ ալ սեփականեց եպիսկոպոս ձեռնադրելու իշխանութիւնը, որուն բնաւ նշանը չկայ, և անշուշտ Սիսէ կը ձեռնադրուէին Երուսաղէմի եպիսկոպոսները, և անոնց մէջէն կ'առնուէին պատրիարքները։ Սսոյ աթոռն ալ, որ արդէն համակերպած էր Սսոյ կանոններուն չհնազանդող վիճակները իրմէ չօտարացնել, և Հայաստանի ու Փոքր Ասիոյ և նոյն իսկ Կիլիկիոյ մէջ ընդդիմադիրներու հետ յարաբերութիւններ չի խզել, կը բաւականանար գոնէ ձեռնադրութեան ու միւռոնի պայմաններով յարաբե-

րութեան մէջ գտնուիլ, ներքին վարչական գործերու մասնակցութենէն ու հսկողութենէն ձեռք քաշելով։ Այդ տեսութեամբ ոչ մի բողոք կամ ընդդիմութիւն կամ վերապահութիւն տեղի չունեցաւ։ Սոյն աթոռին կողմէն Սարգիսի ձեռնարկին դէմ, որ գործնականապէս կատարեալ իրողութեան ձեւ ունէր արդէն, Էօմէր Խալիֆային օրէն Երուսաղէմի Հայ եպիսկոպոսներուն ստացած արտօնութիւններովը։ Այսպէս եղաւ Երուսաղէմի Հայ պատրիարքութեան սկզբնաւորութիւնը, որ հետզհետէ աւելի ամրացաւ եւ Հայ եկեղեցւոյ նուիրապետութեան մասը կազմեց։ Իսկ պատրիարքական իրաւասութեան վիճակները կապուած մնացին Եգիպտոսի սուլտանութեան սահմաններուն հետ։ Սարգիսի պատրիարքութիւնը 32 տարի տեւած կ'ըսուի իւր ընտրութենէն սկսելով, այլ երկու տարի միայն՝ իւր պատրիարքութիւնը հաչակելէն ետքը։ Այդ միջոցին նա պարտաւորուեցաւ անգամ մըն ալ անձամբ Եգիպտոս երթալ, խափանելու համար Վրաց կողմէն եղած ոտնձգութիւնը, որոնք կ'ուզէին գրաւել Ս. Յակոբայ վանքը եւ տէր լինել Հայոց ստացութիւններուն։ Վրաց թագաւորին ինչ հիմամբ դիմում ընելը չբացատրեր Երուսաղէմի պատմագիրը (ԱՍՏ.Ա.202), սակայն դիւրին է նկատել, թէ Վրաց թագաւորութիւնը Թաթար խաներու հովանւոյն ներքեւ Հայաստանի հիւսիսային գաւառներու կը տիրէր, եւ այդ տեսութեամբ կրցած է ինքզինքը իբր Հայոց թագաւոր ցուցնել եւ Հայ ստացութեանց տէր լինելու ձգտիլ։ Բայց որովհետեւ Սարգիս իւր ձեռքն ունէր Էօմէր խալիֆայէն առմին շնորհուած հրովարտակները, սուլտանն անոնց զօրութեամբ հաւանեցաւ Սարգիսի պահանջին, եւ 1312'ին նոր հրովարտակով հաստատեց Հայոց իրաւունքները (ԱՍՏ.Ա.203)։ Միւս տարին Սարգիս կը կնքէր իւր բազմաշխատ կեանքը, եւ Աստուածատուր կը շարունակէր անոր գործը։ Ատանայի ժողովի 1317 տարին, Աստուածատուրի մահուան եւ Դաւիթի յաջորդելուն թուականն է (ԲԱՌ.44)։ Սակայն Երուսաղէմի աթոռը միանգամ ընդ միշտ այդ խնդիրներէն մաքրութիւնը հեռացուցած էր, որով պէտք չունեցաւ զբաղիլ Կիլիկիոյ մէջ արծարծուող լատինամոլ ձեռնարկներու հետ։ Մենք մտադիր ըլլալով Հայ եկեղեցւոյն պատկանող բոլոր տեղեկութիւնները ամփոփել, Երուսաղէմի աթոռին գործերուն ալ տեղ պիտի տանք պատմութեանս մէջ, գլխաւոր եւ հանրութիւնը շահագրգռող պարագաները քաղելով։ Այսպէս է օրինակի համար Դաւիթի օրով Վրաց ձեռնարկէցութեան կրկնուիլը, որ նոյնպէս վերջացաւ Հայոց նպաստաւոր կերպով, եւ 1319'ին տրուած նոր հրովարտակով մը հաստատուեցան Հայոց իրաւունքները (ԱՍՏ.Ա.204)։

**1264.** Ատանայի ժողովէն ետքը մինչեւ Օշինի մահը անցնող երեք տարիները խառն ու կցկտուր եղելութեանց

**ԿՈՏՈՐԱԾՆԵՐ ԵՒ ԱՒԵՐԱԾՆԵՐ**

միջոց մը կը ներկայեն, ուր զանազան դիպուածներ իրարու կը խառնուին, առանց իրական եւ կարեւոր օգուտ մը արտադրելու։ Հին Սելճուքեան սուլտանութեան բեկորներէն կազմուած տէրութիւն մըն ալ Գարամանի իշխանութիւնն էր, Հայոց թագաւորութեան դրացի, որ 1318'ին յանկարծական ասպատակ մը սփռեց մինչեւ Տարսոնի կողմերը. այլ պարտաւորուեցաւ յետս նահանջել Կոռիկոսի իշխան Օշինի զօրութենէն, որ կոտորեաց զնոսա Աստուծով և [illegible] (ՍՄԲ-128)։ Բայց անոնց ետեւէն կը հասնէին Եգիպտացիք, եւ բաւական աւերածներ կը գործէին, ու մինչեւ Սիս կը հասնէին 1319'ին։ Անգամ մըն ալ Օշին՝ պապին դեսպաններ ղրկելով օգնութիւն կը յուսար ստանալ, քանի որ անոր կամքը կատարած էր, լատինական հաւատք ու ծէս մուծանել ջանալով Հայոց մէջ, բայց այս անգամ ալ ձեռք ձգածը պարզ յանձնարարական մըն էր Գաղղիոյ թագաւորին ուղղուած (ՍԻՍ.558)։ Ցիշենք եւս Օշինի եւ Կիպրոսի Հենրիկոս թագաւորի մէջ արծարծուած գժտութիւնը, հինէն տեղի ունեցած ընտանեկան վէճերու հետեւանօք (§ 1252), որք լաւ ազդեցութիւն չէին ըներ, զի քրիստոնեայ իշխանութեանց երկու միացորդներն էին Հայոց եւ Կիպրոսի թագաւորութիւնները, եւ Արեւմուտք կը յուսար, թէ անոնք բաւական պիտի ըլլան վերականգնել Երուսաղէմի քրիստոնեայ թագաւորութիւնը, որչափ ալ ինքը պէտք եղած օգնութիւնը կը զլանար։ Ցովհաննէս պապ յորդորական-

*ներով և քննիչներ ղրկելով կ'աշխատէր առաջեւն առնուլ այդ վտանգաւոր գժտութեանց, սակայն հիմնական արդիւնք մը չէր ստանար (ՍԻՍ. 558)։ Ցիշենք ևս ահաւոր երկրաշարժը, որ 1319'ին մեծամեծ վնասներ հասուց Արեւելեան կողմերը։ Գեղարքունի գաւառին մէջ ընկղմեաց զեղջամբ փլեալ հանդերձ որմովք, և Արտազու Ս. Թադէոսի մեծ վանքն ու եկեղեցին ալ կործանեաց, և զոմանս փլոյց, և շատեր աւերակներու ներքեւ թաղեց, սակայն Զաքարիա արքեպիսկոպոս ջանաց աւերածները նորոգել (ՍԱՄ. 157)։ Այս այն երկրաշարժն է, որուն մէջ Անի ալ վնասուեցաւ, և որ Երզնկացիին անէծքին վերագրուեցաւ (§ 1240)։ Կոստանդին Կեսարացի կաթողիկոսին և Օշին թագաւորին կողմէ, յատուկ գործունէութեան նշաններ չեն երեւիր այդ միջոցին։ Լատինամոլ ձեռնարկներէն յուսախաբ, և Լատիններու օգնութենէն ալ յուսահատ, միւս կողմէն իրենց ուղղութիւնն ալ փոխելու արիութենէն զուրկ, թերեւս և ամօթապարտ, քաշուած և անգործ դիրք մը առած կը տեսնուին։*

**1265.** *Այդ կացութեան մէջ տեղի կ'ունենայ Օշինի մահը 1320 յուլիս 20'ին (ՍԻՍ. 558), իսկ Ցայսմաւուրքի համեմատ 19'ին (ՅԱՍ. Ա. 262)։*

**ՕՇԻՆԻ ՄԱՀԸ**

*Պարագաները յայտնի չեն, այլ անողոք ախտի մը հետեւանք եղած պիտի ըլլայ Օշինի մահը, զի դեռ 37 տարեկան էր, և ոչ ալ պատահական արկած մը կը յիշուի, ինչպէս հանդիպած էր Ալինախ եղբօրը (§ 1259)։ Միւս կողմէն Օշին իւր մօտալուտ մահը ինքն ալ զգացած պիտի ըլլայ, որ նախահոգ զգուշութեամբ պէտք տեսաւ յաջորդութեան գործը կարգադրել։ Միակ զաւակ մը ունէր իւր առաջին կնոջմէն՝ Զապէլէ (§ 1254), զի երկրորդ կնոջմէն Յովհաննայէ ունեցած զաւակը [illegible] եղած էր (ԴԱՐ. 27)։ Լեւոն արքայորդին հազիւ 10 տարեկան էր (ՍԱՄ. 157), թէպէտ ութը տարեկան կարծող ալ կայ (ԴԱՐ. 27), և անհնար էր որ կարենար գլուխ կանգնել թագաւորութեան, ուստի Օշին հոգաց զօրաւոր խնամակալութիւն մը կազմել իւր որդւոյն, որ հոգան սնուցանել զորդին իւր և ծառայել հաւատարմութեամբ մինչև ի տասն ամս, և ապա, այսինքն քսան տարեկան եղած ատեն, յանձնել զաթոռ թագաւորութեան և զաշխարհն յորդին իւր Լեւոն (ՍԱՄ. 157)։ Ընտրուած խնամակալներուն առաջինն էր Օշին իշխան Կոռիկոսի՝ Հեթում պատմիչի որդին և Օշին թագաւորի աներձագը, որ այնուհետեւ Պայլ անունը առաւ, իբրեւ առաջին և բուն խնամակալ թագաւորութեան։ Խնամակալութեան միւս անդամակիցներն էին Կոստանդին մարաջախտ՝ Օշին Կոռիկոսեանի եղբայրը, և Հեթում Նղիրի իշխան՝ թագաւորական սենեկապետը (ՍԱՄ. 157)։ Ոմանք չորրորդ անդամակից մըն ալ կ'աւելցնեն, Բաղդովինոս կամ Բօթին կամ Պաղտին անունով, այլ որովհետեւ մարաջախտութիւնը անոր կը վերագրեն (ԴԱՐ. 28), կրնայ չփոթութենէ յառաջ եկած անուն մը երեւնալ, այնպէս որ ոմանք Կոստանդինի տեղ միայն Պաղտինը կը նշանակեն իբր խնամակալ (ՍԻՍ. 558)։ Սակայն առաջիկային յատկապէս Պաղտինի զաւակները պատմական դերերու մէջ կը յիշուին։ Այսպէս Օշին յաջորդութեան գործը կարգադրելով, կեանքը կը կնքէ տակաւին երիտասարդութեան մէջ, լատինամոլութեամբը սերմանած գժտութիւնները, և Հայոց դէմ դրացի տէրութեանց դրդութիւնները միայն թողլով իւր ետեւէն։ Մարմինը սովորութեան համեմատ թաղուեցաւ Դրազարկի մէջ (ՍԱՄ. 157)։ Օշին Կոռիկոսեան անմիջապէս ձեռք առաւ երկրին կառավարութիւնը, և տէր կանգնեցաւ մանուկ թագաւորին և այրի թագուհւոյն։ Հանդիսապէս օծել և թագադրել տուաւ զդեռաբոյսն Լեւոն, հարկաւ Սիսի մէջ, Կեսարացի կաթողիկոսին ձեռքով։ Թուականը թէպէտ 1321 ցուցուած է (ՍՄԲ. 128), սակայն չենք կարծեր թէ շատ ուշացած ըլլայ, և առաւելն յունուար 6'ին Աստուածայայտնութեան տօնին թողուած կ'ըլլայ հանդէսութիւնը, որ սուրբ աւիթներու մէջ ալ իբր պատեհ օր նկատուած էր։ Օշին Պայլ իւր իշխանութիւնը աւելի զօրացնելու համար, ամուսնացաւ այրի թագուհի Յովհաննայի հետ, որուն անձամբ ընկերացած էր Նէապոլիսէ գալուն, և այն ատենէն հարսն է մեր նորա (ԴԱՐ. 28), իսկ իւր առջի կնոջմէն ունեցած Ալիծ աղջիկը մանուկ թագաւորին հետ ամուսնացնելով թագուհի հռչակեց, և*

ինքն ալ թագաւորահայրի կերպարանը առաւ։

1266. Օշինի ընթացքը իբրեւ խնամակալ, բռնակալի հովեր սկսաւ առնել անիրաւ գրաւումներով։ Կոտեկոսեանք շատ բերդեր տղերանց տային, որ չէր եղեանց սահմանով տղերանց (ՍԻՍ.340),

**ՕՇԻՆ ԽՆԱՄԱԿԱԼ**

և ինքն Օշին շատ ծառայութիւն, իրեն դէմ ելլողները ետ դարձուցել տանել, և շատ հալածել (ԴԱՐ. 29), և երբ հակառակութիւնները կը չատնային, ինքն զօրութեամբ կը ճնշէր։ Քաղաքական ուղղութեամբ ալ կատարելապէս լատինամոլ ընթացքին կը հետեւէր, և Յովհաննէս պապ ուղղակի անոր հետ կը թղթակցէր, Օշին մինչեւ այն կէտը կը հասկցնէր չողոքորթութիւնը, որ Կոռիկոսի եպիսկոպոս մըն ալ հաստատելու համար պապին կը դիմէր (ՍԻՍ. 340)։ Այս ամէնը Լեւոն Ե'ի անուանական թագաւորութեան առաջին երկու տարիներուն մէջ կատարուած իրողութիւններ են։ Փափաքելի էր որ երբ ներքինը բարեկարգ չէր, գոնէ արտաքինը հանդարտ ըլլար. մինչ ընդհակառակն, որչափ Հայերն դէպ արեւմուտք կը միտէին, այնչափ Եգիպտացիք իրենց թշնամութիւնը կը սաստկացնէին, և նոյն փաստով Թաթարներուն ալ աչքին կասկածաւոր կը ցուցնէին Հայերը։ Այս կերպով կը կազմուէր այլազգիներու համերաշխ գործակցութիւնը Հայերուն դէմ, Թիմուրթաշ Թաթարը հիւսիսէն, Ամիրօմար Թուրքը արեւելքէն, և Նասըր-Մուհամմէտ սուլտան հարաւէն։ Թիմուրթաշ առաջին անգամ քարուքանդ ըրաւ Կիլիկիան, ուր նշանաւոր Հայ զօրավարներ ալ սպաննուեցան, Կիօռիկոս տէր Կանչոյ՝ Օշինի եղբայրը, Հեթում իշխան Ջլկանոցի, Կոստանդին անոր եղբայրը, Վահրամ Լօռիկ, Օշին՝ Կոստանդին մարաջախտի որդին, և ուրիշ 21 նշանաւոր ասպետներ (ՍՄԲ. 130)։ Իսկ Եգիպտացիք Այասս զօրաւոր բերդին վրայ թափեցին իրենց ոյժը, և մեծամեծ աւերներ հասուցին, և աւարով ու գերութեամբ ետ դարձան։ Օշին խնամակալ և Կոստանդին կաթողիկոս Յովհաննէս պապին դիմեցին նորէն, իսկ սա ժողով գումարեց Հայոց օգնելու համար, ուր հարկաւ նախապէս անոնց դաւանութիւնը քննեցին իբր պայման։ Արդիւնքն եղաւ որ պապը 1322 դեկտեմբեր 26'ի կոնդակով բոլոր քրիստոնեաները կը հրաւիրէր Հայոց համար աղօթելու (ՍԻՍ.558), բայց զինուորական և նիւթական օգնութիւն չէր հասցըներ։ Կաթողիկոսն ու խնամակալը շատ աւելի օգտակար գործ ըրած պիտի ըլլային, եթէ Հայոց ներքին անհամաձայնութեանց պատճառները վերցնելու աշխատէին, որովհետեւ օտարներուն խսկ աչքին զարկած էր, թէ երկպառակութիւն եր ի մէջ նոցա, և անմիաբան լինել յերեսն՝ ընդ մեծամեծս կասէին և ի մեծամեծս կանէին (ՉԱՄ.Գ.321)։

1267. Կոստանդին Կեսարացի կաթողիկոս ծերացած էր արդէն, և չէր կրնար անըդդայ մնալ այլ եղերական պատահարներու հանդէպ, զի խիղճն ալ պէտք էր վրդովուէր. թէ լաւ ծառայութիւն մը չէր ըրած ազգին և եկեղեցւոյն, իւր լատինամոլ ուղղութեամբը, և երկպառակութեանց որոմը աճեցնելով։

**ԿՈՍՏԱՆԴԻՆԻ ՄԱՀԸ**

Մահը տեղի ունեցած կ'ըլլայ 1323'ին, զի 16 տարի տեւողութիւն տրուած է անոր կաթողիկոսութեան (ՍԱՄ.155), որ սկսաւ 1307'ին (§ 1245)։ Ըստ այսմ 1323 տարին եղած է յաջորդին թուականը (ՍԱՄ.158), ինչչափ ալ ուրիշ տեղ 1322 գրուած ըլլայ (ՍՄԲ.130)։ Կը կարծենք թէ այդ տարբերութիւնը չուտով կը համաձայնի, Կեսարացիին մահը 1322'ին վերջը դնելով, զի է թուին Ունդեան որ է յունուար 6'ին, կը դրուի յաջորդին կաթողիկոսանալը (ՍՄԲ.130)։ Կեսարացիին վրայ դատողութիւննիս առիթ ունեցանք յայտնել պատմութեանս ընթացքին, թէ իրաւամբ իրեն տրուած է առաջին աղօթարար է Սիս (ՍԱՄ.152) կոչումը, և Կոստանդին Հերձուածող մակդիր անունը (ԴԱՎ.335), որովհետեւ ինքն եղաւ, որ պաշտօնական ձեւ և գործադրական ոյժ տալ աշխատեցաւ այն ամէն նորութեանց՝ զորս իւր նախորդը իբր ծրագիր և առաջարկ մէջ տեղ հանած էր։ Ընդհանուր կարծիքով Անաւարզեցին է, որ սաստիկ կը դատափետուի իւր լատինամոլ ընթացքին համար, սակայն ստոյգը ուզելով ըսել, Անաւարզեցիին ըրածը շատ կը թեթեւնայ Կեսարացիին գործին հանդէպ, զի գոնէ Անաւարզեցին չհամարձակեցաւ իւր

ծրագիրին գործադրութիւնը պահանջել ժողովական որոշումէ առաջ, ուր կը կարծէր միամտաբար բոլոր եպիսկոպոսներն ու վիճակները համոզել, մինչ Կեսարացին անկանոն ժողովներով և անտեղի ճանպաներով ուզեց պաշտօնական զօրութիւն կազմել, և անոնց կրթնելով քաջալերեց Օշինի բռնական ձեռնարկները (§ 1251)։ Այս առթիւ անգամ մըն ալ պիտի կրկնենք, թէ պէտք չէ Կեսարացին Կատուկեցիին հետ չփոթել (§1245), և ոչ ալ Կոստանդին Բ Կատուկեցի կաթողիկոսին, առաքինի հայրապետին և խոնարհամիտ հրաժարողին, օրհնեալ յիշատակը աղարտել, Կոստանդին Գ Կեսարացիին նման մէկու մը գործերը անոր վերագրելով։

**1268**. Ժամանակին նշանաւոր անձնաւորութիւններէն պիտի յիշենք Կարնոյ եպիսկոպոս Գրիգորը, որ

ԳՐԻԳՈՐ ԿԱՐՆԵՑԻ

վկայութեամբ նահատակուած է 1321 յունիս 20'ին շաբաթ օր, որ այն տարի Ելն ի վիրապէ յիշատակը կ'իյնար, թէպէտ Ցայսմաւուրքը յունուար 29'ին դրած է, շարժական և անշարժ տօմարներուն համաձայնութեան չփոթութեանց պատճառով (ՆՈՐ. 128)։ Թիմուրթաշ Թաթար զօրավարը, որ Երկաթաքար կը թարգմանուի (ՆՈՐ. 122), Կիլիկիան աւերելէն ետքը (§ 1266), Կեսարիայի վրայէն Կարին անցաւ, և քաղաքին Գրիգոր եպիսկոպոսին և անոր հօրեղբայրը տէր Պապ քահանային վրայ սկսաւ բռնանալ եկեղեցիները կողոպտելու համար, և մինչեւ իսկ իւր հրամանով ըմբռնութեամբ կոչեցաւ Նշխարեցին անունք (ՆՈՐ. 123), իսկ եպիսկոպոսը մինչ իւր հաստատամտութիւնը յայտնելէ չի կասեցաւ, այս պատճառով երկար տանջեցին զայն սաստիկ գանակոծելով, ջիղերը կտրելով, և աղով վէրքերը շփելով, որոնց արիութեամբ համբերեց եպիսկոպոսը։ Բանտարկութեան առեն զաղտնի կերպով յաջողեցաւ հաղորդ բերել տալ՝ ճաշակ առնել և մահուան պատրաստուիլ, ինչ որ անդի ունեցաւ գլխատմամբ քաղաքին հրապարակը։ Մարմինը երեք օր բացի թողուելէն ետքը, հրաման եղաւ թաղել, և ամփոփուեցաւ Ս. Սարգիս եկեղեցւոյն քովը (ՆՈՐ. 127), որ այժմ չկայ, բայց այս անունով այսօր ալ աւերակի տեղ մը կը ցուցուի քաղաքին մէջ։ Իսկ քաղաքին գլխաւոր եկեղեցին Ս. Կարապետ անունով կը յիշատակուի (ՆՈՐ. 124)։ Ժամանակակից ուրիշ վկայ մըն ալ կը յիշուի, Զուատ անունով, որ տարաժամ հառաչէ ողբեալ յանօրինաց և խառնեցաւ ընդ մարտիրոսացն, ինչպէս կը գրէ իւր եղբայրն Սարգիս աբեղայ, հաւաքածոյի մը յիշատակարանին մէջ, զոր գրած է 1317'ին Վայոցձորի Գայլեձոր վանքը (ՍԻՆ. 133)։

---

# Տ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Դ. ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

**1269**. Կեսարացիին յաջորդը համանուն մըն է, Սսոյ եպիսկոպոս Կոստանդին Լամբրոնացի, որ հրամանաւ Բարեպաշտին Լևոնի և շատ ե-

ՆԱԽԸՆԹԱՑՆ ՈՒ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ

պիսկոպոսաց կաթողիկոս օծուած է ի տօնի Ծննդեան, զոր համեմատեցինք 1323 յունուար 6'ին (§ 1267)։ Լամբրոնացի կոչումը, ծննդավայրէ աւելի ազգատոհմի անուն կը կարծենք մենք, զի պաշտօնը յիշատակելէ ետքը ծննդավայրը յիշել պէտք չէր ըլլար, և այն ալ ոչ թէ ի Լամբրոն քաղաքէ իմաստով, որչափ զատուկ մականունի ձևով։ Դրազարկեցի ալ կոչուած է (ՀԱՑ.535), անշուշտ Դրազարկի առաջնորդ ըլլալուն համար, որ սովորաբար Սսոյ եպիսկոպոսութեան յարակից պաշտօն մըն էր։ Իսկ Սսոյ եպիսկոպոս ըլլալը կը ցուցնէ, թէ նոյնինքն է, որ Սսոյ (ԿԱԼ.458) և Ատանայի (ԿԱԼ.503) ժողովներուն մէջ նախապատիւ եպիսկոպոսներէն մէկը, և պաշտօնին բերմունքով և անձնական ձգտումով Կեսարացիին գործակիցներէն եղած է, և անշուշտ այդ պարագային ալ կը պարտի անոր յաջորդութեան կոչուիլը։ Կաթողիկոսարանին Սսոյ մէջ հաստատուելէն ետքն ալ, Սսոյ մէջ թեմակալ եպիսկոպոս

մը գտնուիլը կը ցուցնէ, թէ կաթողիկոսներ Հռոմկլայէ բռնի հեռանալնէն ետքը, Սիսը իրր բուն աթոռանիստ չէին նկատեր, թէ ոչ Սսոյ մէջ ուրիշ թեմակալ գտնուելու չէր։ Կոստանդինի ուղղութեան գալով, ան ալ իւր նախորդին նման լատինասիրութեան հակամէտ մը պէտք ենք ճանչնալ, թէպէտեւ իւր օրով նախանձայոյզ գործունէութեան փորձեր և բռնադատութիւններ չկրկնուեցան։ Կոստանդին աւելի քաղաքական գործերու հետամուտ անձ մը կը տեսնուի, և պարագաներ կշռելով յարմարագոյն և օգտակարագոյն ընթացքին հետեւող։ Լատինական օգնութեանց վրայ վստահութիւնը նուազած ըլլալուն, և անոնց անզօրութեան համոզուելուն հետեւանքն է անշուշտ, որ Կոստանդին Լամբրոնացի, Բեղեւ ծեր և տխուր մարմնով, այսու հանդերձ անմիջապէս ընդոյ և հնարք իմաստութեան այս աշխարհի, և յանձն կ'առնէ անյամբ անձին երթալ ի Մուղ առ սուլտանն (ՀԱՑ.535), այսինքն և յԵգիպտոս առ Նասըր սուլտան (ՍԱՄ.158), և իբր բանագնաց հաշտարար խաղաղութիւն կը կնքէ անոր հետ։ Խաղաղութիւնը կը հաստատուի 15 տարւոյ պայմանաժամով, Հայոց կողմէ հարկի գումար մը վճարելու, և Եգիպտացւոց կողմէն քանդուած բերդերնին վերաշինելու պայմանով (ՍԻՍ.558)։ Բայց դժբախտաբար տեւական չըլլար այդ խաղաղութիւնը, որ կնքուեցաւ 1323'ին, Կոստանդինի կաթողիկոսութեան առաջին տարին։

**ԿԱԹՈՂԻԿՈՍ ԵՒ ԽՆԱՄԱԿԱԼ**

**1270**. Օշին խնամակալին բռնական ընթացքը յիշեցինք արդէն (§ 1266), որ հետզհետէ կը շարունակէր և կրնդարձակուէր, այնպէս որ արքունական անձերու վրայ ալ ձեռք զնելու կը յաւակնէր, և նոյն իսկ թագաւորին հօրաքոյրը, Օշինի քոյրը, Ամաւրի Լուսինեանի այրին Զապլուն տիկինը սնոտի բարութանքներով չորս զաւակներուն հետ բանտարկել կուտար, մայրերնին կը հրամայէր խեղդել, և զաւակներէն Հուգոնը թունաւորել, և Հենրիկոսը անօթութեամբ և ծարաւով սպաննել, մինչեւ իսկ [illegible], եթէ պիտի հաւատանք Դարդելի հաւաքած բերանացի լուրերուն։ Իսկ վերջին երկու զաւակները, որ շատ պզտիկ էին, Ջիւանն ու Պէմունդը աքսորել կուտար, և անոնք ալ կ'ապաւինէին Հռոդոս՝ Հիւրընկալ ասպետներուն մօտ (ԴԱՐ. 29)։ Միջին զաւակը Գուիտոն, Կիլիկիայէ դուրս Կոստանդնուպոլիս կը գտնուէր (ԴԱՐ. 32), իւր մօրաքրոջ Ռիթա կայսրուհւոյն մօտ, որով ազատ կը մնար Օշինի բռնութենէն։ Բայց ինքն Օշին խնամակալն ալ ցաւերէ ազատ չէր ըլլար, իւր սիրուհւոյն ու ամուսնոյն Ցոլհաննայի մեռնելովը, ուսկից աղջիկ մը միայն ունեցաւ Մարիամ անունով։ Այդ եղելութիւնք տեղի ունեցան միեւնոյն 1323 տարին։ Այդ միջոցին չէին դադրած Հայերու և Լատիններու յարաբերութիւնները, փոխոխ դեսպանութիւնք և թղթակցութիւնք կը շարունակէին, ինչ որ չէր կրնար Եգիպտացիներու աչքէն վրիպիլ, որոնք միտուրնին դրած էին Լատիններուն հետքերը Արեւելքէն ջնջել։ Ուստի խաղաղութեան դաշինքէն հազիւ տարի մը ետքը, 1324'ին, նորէն սկսան Եգիպտացիներու կողմէն արշաւանքներ ու ասպատակներ, թէպէտեւ ոչ ընդհանուր կերպով։ Այլ պատահական յարձակումներն ալ բաւական էին Հայերը նեղելու, և խաղաղութեան արդիւնքները խանգարելու։ Պայմաններուն դրժել մրն էր այս Եգիպտացիներուն կողմէն, որչափ ալ միւս կողմէն հնար չէ արդարացընել Հայերուն անհետատես յարաբերութիւնները։ Կոստանդին Լամբրոնացին պէտք չէ հաճութեամբ տեսած ըլլայ իւր գործին խանգարումը, թերեւս համամիտ ալ եղած չըլլայ լատինական յարաբերութեանց, որոց դէմ բացարձակապէս ընդդիմանալու կ'արգելուէր իւր նախընթացով։ Մենք կը բաւականանք նկատի առնել, թէ Հռոմի և Արեւմուտքի հետ յարաբերութեանց մէջ բնաւ Կոստանդինի անունը կամ մասնակցութիւնը չյիշուիր. և ամէն բան Լեւոնի և Օշինի անունով կը գրուի ու կը գործուի։ Ասկէ կը համարձակինք հետեւցնել, թէ Կոստանդին Լամբրոնացին պէտք է իւր լատինասիրութենէն պաղած, և չեզոք դիրքի մէջ ամփոփուած ըլլայ ընթացիկ գործառնութեանց մասին։ Օշինի և Լեւոնի ղրկած դեսպաններէն շատեր՝ իրաւ եկեղեցականներ էին, Բարսեղ եպիսկոպոս Տարսոնի, Եղբայր Թադէոս կրօնաւոր, Թադէոս եպիսկոպոս Կա-

*ֆայի և ուրիշներ, սակայն անկէ չհետևիր Կոստանդինի ալ գործակցութիւնը, զի եկեղեցականներն ալ ուղղակի արքունեաց տրամադրութեան ներքեւ էին, առանց հայրապետի միջնորդութեան։*

**1271**. *Կոստանդին Լամբրոնացիի պաշտօնավարութիւնը երկար չեղաւ, հազիւ թէ չորս տարի, և այն ալ ալեւոր տարիքի մէջ, երբ իրմէ մեծ գործունէութիւն ալ չէր սպասուեր։*

**ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՄԱՀԸ**

*Վախճանը ստեղի ունեցած է բնական մահուամբ, զի ոչ մի մասնաւոր պարագայ յիշուած չէ այս մասին։ Սմբատի շարունակողը* 1326'*ին կը դնէ Կոստանդինի մահը, և* 1327'*ին յաջորդին ընտրութիւնը։ Անեցիին շարունակողը* 4 *տարի կաթողիկոսութիւն կու տայ, հարկաւ ոչ օրը օրին լրացած, որով կրնայ արդարանալ* 1326'*ին Կոստանդինի մեռնիլը, և յաջորդ տարւոյն սկիզբը յաջորդին նստիլը, ինչպէս որ Լամբրոնացին ալ* 1323'*ին առաջին օրերը կաթողիկոսացած էր* (§ 1267)*։ Ասոր ալ գերեզմանը եղած է Դրազարկի վանքը, որուն առաջնորդութիւնն ալ վարած էր։ Տարօրինակ պարագայ մը կը յիշէ Սմբատի շարունակողը թաղման առթիւ։ Երբոր, կ'ըսէ, եղեւ վախճան տէր Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսին, նա՛ եդան զաւրինակ եդան, և զաղաւնին ոսկեղէն չէին, և զգաւազանն և զմազն, և ոսկի ամենային չգտան։ Առաջին դիտելու կէտն այն է, թէ ինչո՛ւ և ինչպէ՛ս յառաջագոյն վախճանած կաթողիկոսի մը գերեզմանը կը բանան։ Պատմիչը չըսեր որ նոյն գերեզմանին մէջ նոր վախճանած կաթողիկոսը պիտի դնէին, ինչ որ հաւանական ենթադրութիւն մըն է, բայց տարօրինակ սովորութեան մը օրինակ կը ներկայանայ։ Միւս կողմէն դիւրին ալ չէ պարզ հետաքրքրական նպատակ մը ենթադրել, նախնեաց ոսկերոտիքը զննելու կամ տեղափոխելու համար, վասն զի այն ատեն պէտք չէր ըլլար ուրիշ կաթողիկոսի մը մահուան սպասել, մինչ Բարձրբերդցիին գերեզմանը բացած են, յորժամ մեռաւ տէր Կոստանդին Լամբրոնացի կաթողիկոսն, և թաղեցաւ ի Դրազարկն։ Իսկ գերեզմանին մէջ եղած նիւթերէն ոմանց մնալը, իւրաքանչիւր նիւթին տոկունութեան հետեւանքն էր, թաղուելէն* 60 *տարի ետքը դիմանալու չափ։ Միայն զքանչելիք կարծուած է ոսկր չգտնուիլը։ Իրաւ ոսկրներն ալ կրնան հողին մէջ փտիլ, այլ դժուարաւ* 60 *տարուայ միջոցին մէջ. բայց եթէ շատ տկարակազմ եղած ըլլան, ինչ որ չենթադրուիր Բարձրբերդցիին պէս երկարատեւ աշխատութեան դիմացող անձի մը վրայ* (§ 1143)*։ Ժամանակակիցներուն մասին ըսուած է, թէ քառասուն տարին Աստուծոյ, որ առնէ ստեղծողն ի սուրբս* (ՍՄԲ. 139)*, որոնք թերեւս մարմնոյ վերափոխում մը մեկնած ըլլան։ Իսկ մենք անմեկնելի պարագայ մը կը տեսնենք, և անհիմն զրոյցի մը արձագանգ կը կարծենք պատմուածը։*

---

# Տ. ՅԱԿՈԲ Բ. ԱՆԱՒԱՐԶՑԵՑԻ

1327 — ... 1341

**1272**. *Կոստանդին Լամբրոնացիի մահը* 1326'*ին, և յաջորդին ընտրութիւնը* 1327'*ին նշանակուիլը* (ՍՄԲ. 130)*, իրաւունք կու տայ հետեւցնել, թէ* 1327'*ին սկիզբները, և թերեւս նոյն իսկ Աստուածայայտնութեան տօնին, կատարուեցաւ Յակոբ Բ կաթողիկոսի օծումը։*

**ՆԱԽԸՆԹԱՑՆ ՈՒ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ**

*Իր նախընթացին համար կը յիշուի, թէ էր յաջորդի տէր Գրիգորի Տարսոնեցւոյ* (ՍՄԲ. 130)*, որով կը նոյնանայ նոյն այն Յակոբ եպիսկոպոսի հետ, որ յաջորդէ տէր Գրիգոր կաթողիկոսի կոչմամբ ներկայ եղած էր Սսոյ ժողովին* (ԿԱԼ. 459)*, բայց չէ յիշուած Ատանայի ժողովին մէջ։ Թերեւս յետոյ վիճակաւոր դրկուած է, և նոյն ինքն Կապանի Յակոբ եպիսկոպոսն է* (ԿԱԼ. 504)*, որ ատէպ Արեւմուտքի դեսպանութեանց ալ գործածուեցաւ* (ՄԽՍ. 558)*։ Իսկ վերջին պահուն կը ներկայանայ իբր արքեպիսկոպոս Անաւարզ-*

ւոյ (ՍՄԲ. 130), մինչ Աստանայի ժողովին մէջ՝ Յովհաննէս էր Անարզաբայ եպիսկոպոսը (ԿԱԼ. 505) և Յակոբ անոր յաջորդը եղած պիտի ըլլայ։ Այդ տեսութեամբ Յակոբ նախ կաթողիկոսարանի ծառայած, յետոյ Կապանի, վերջէն Անարզաբայ եպիսկոպոսութիւնները վարած ըլլալով, կը հաստատուի թէ Հայ եկեղեցւոյ նուիրապետութեան մէջ ընդունուած էր աթոռէ աթոռ անցնելով բարձրանալու դրութիւնը։ Յակոբ սովորական կիրառութեան մէջ՝ Տարսոնացի և Սսեցի և Անաւարզեցի կոչուած է անխտիր, իսկ մենք այդ վերջինը նախադասեցինք իբր մակդիր անուն, որ իր վերջին թեմակալութեան հետ, Գրիգոր Անաւարզեցիի հետ ազգակցութիւնն ալ կը չօշափէ։ Յակոբ կաթողիկոսութեան բարձրացած է անշուշտ Լեւոնի և Օշինի պաշտպանութեամբ. իսկ իբր արժանիք սեպուած են իրեն Անաւարզեցիին ազգակցութիւնը և լատինասէր ուղղութեան ծառայութիւնները, որոնց կարգին կը միտինք համարել Արեւմուտքի դեսպանութիւնները։ Այսու հանդերձ Յակոբ չէ եղած այն մոլեռանդ լատինասէրը, ինչ որ եղած են Կոստանդին Կեսարացին, և պէտք եղած խոհականութիւնն ունեցած է անսանձ լատինամոլութիւնը զսպելու ձեռնարկելով։ Լատինասէր ուղղութիւնը ժամանակին իբր քաղաքագիտական միջոց մը ըմբռնուած էր երկրին և թագաւորութեան պաշտպանութեան համար, և այդ դիտումով Լատիններուն տրուած համարձակութիւնները զանոնք տէր ըրած էին արքունիքին և հայրապետանոցին և ընդհանուր կացութեան, շնորհիւ ազգակցութեանց և խնամութեանց, և զօրութեամբ ամէն կողմ ցրուած լատին կրօնաւորաց, մինչեւ իսկ արքունիքի խորհրդականութեան մէջ։ Այդ դրութեան ներքեւ աթոռ բարձրացող կաթողիկոսը, որ ինքն ալ այդ ուղղութեան ծառայողներէն եղած է իր նախընթացին մէջ, չէր կրնար բացարձակապէս խզել իր կապերը և փոխել իր ընթացքը. և մեր տեսութեամբ իբր արժանիք կը պարտաւորուինք նկատել Յակոբի վրայ, եթէ կրցաւ մինչեւ մէկ աստիճան ստրկաբար չծառայել լատինամոլ գաղափարին; և համարձակութիւնն ալ ունեցաւ աթոռէն ալ հրաժարիլ, իր մտադրութենէն չշեղելու համար։

1273. Երբոր Կիլիկիոյ մէջ այդ կացութիւնը կը տիրէր, լատինամոլ դրութեան նոր և աւելի բուռն հոսանք մը կը սկսէր Արեւելեան գաւառներէն, որ մինչեւ այն ատեն աւելի զերծ մնացեր էին անոր ազդեցութենէն, գոնէ Հայութեան մէջ։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՔՌՆԵՑԻ**

Յովհաննէս Իբ պապէն կազմակերպուած հոմէնադաւան արշաւանքը, որչափ ալ հայադաւանութեան դէմ ուղղուած, սակայն իր կեդրոնը մի քիչ հեռու հաստատած էր Սուլտանիայի մէջ (§ 1241), ուրկէ հետզհետէ իր ազդեցութիւնը կը տարածէր շրջակայ գաւառներու վրայ։ Բարթողիմէոս Պոնոնիացի, Մարաղայի լատին եպիսկոպոսը, գիտութեան և կարողութեան մեծ հռչակ հանած էր այն կողմերը, զի կրօնական ուսմանց կը միացնէր բնագիտական և աստեղագիտական հմտութիւններ ալ, այնպէս որ Գայլեձորի վանքը վարդապետող Եսայի Նչեցին ալ (§ 1241), կը հետաքրքրուէր անոր գիտութենէն օգտուիլ, և 1328'ին Գայլեձորէն Մարաղա կը ղրկէր իր աշակերտներէն Յովհաննէս Քռնեցի վարդապետը, որ երթայ ու ունկնդրէ, և ինչ որ օգտակար կը գտնէ, համբարէ ու դառնայ։ Ընդհանրապէս այդ քայլը Նչեցիին նախաձեռնութեան կը վերագրուի (ՁԱՄ.Գ.326), սակայն նկատելով որ Քռնեցին յետ ուրէց ———րց, —— Հնազանդութեան Հռոմայ Եկեղեցւոյն հոգւով ետ զինքն (ԿԱԼ.510), անտեղի չէր ըլլար հետեւցնել, թէ Քռնեցին ներքին նախապատրաստութեամբ կ'երթար Մարաղա, և բուն միտքը ծածկելով կը յաջողէր վարդապետին հաւանութիւնը ընդունիլ, և կը մեկնէր հայրենակից Յակոբ վարդապետին հետ։ Քռնեցիին այս ներքին մտադրութիւնը կատարելապէս կը քաղուի իր իսկ գրիչէն ելած խօսքերով (ԿԱԼ.518)։ Տարիուկէս մնաց Մարաղա, և Բարթողիմէոսէ և անոր Պետրոս ու Յովհաննէս ընկերներէն սորվեցաւ լատին լեզու և լատին աստուածաբանութիւն, ինքն ալ փոխադարձաբար անոնց հայ լեզու սորվեցուց, և միանգամայն Հայոց մէջ հոմէնադաւանութիւն տարածելու

միտքը մշակեց և միջոցները հոգալու զբաղեցաւ։ Այդ միջոցներէն մէկն ալ իւր աշակերտակիցներէն իրեն համամիտներ որսալն էր, անոնց աչքին առջև փայլեցնելով արևմտեան գիտութեան առաւելութիւնները, և լատին աստուածաբանութեան արուեստակեալ ձևերը, որոց մէջ գլխաւոր տեղ կը բռնէին Բարթողիմէոսի քարոզներուն և գրուածներուն հայերէն թարգմանութիւնները։ Քռնեցին յաջողեցաւ իւր միտքին յանկուցանել, իւր քեռին Գէորգը, որ Քռնայի գիւղաւագն էր, և տիկին Էլթիկ քեռևկինը, որպէս զի նիւթականով նպաստեն յատուկ Հայ վանք մը հիմնել, և համամիտներով անոր մէջ կեդրոնանալ, և անկէ տարածել իրենց գործունէութիւնը Հայաստանի ներքին գաւառներուն վրայ։ Այդ նախահոգ միջոցները կարգադրելէն ետքը, Յովհաննէս Քռնեցին առջև կ'իյնար և վստահօրէն Բարթողիմէոսը Քռնա կ'առաջնորդէր գործին ձեռնարկելու համար։ Իրեն հետ կը դառնար Յակոբ Քռնեցին, և Բարթողիմէոսի հետ էր Պետրոս Արագոնացին, հայերէնի մէջ աւելի զարգացած լատին կրօնաւորը։ Այդ եղելութեան թուական նշանակուած է 1330 տարին (ԿԱԼ.510)։

**1274.** Գէորգ իշխան, Քռնայի գիւղաւագը, զինքն կատարելապէս իւր քեռորդւոյն և անոր բերած անձերուն տրամադրութեան

**ՈՒՆԻԹՈՐ ՄԻԱԲԱՆՆԵՐ**

ներքև դրած էր, անոնց բոլոր նիւթական պէտքերն հոգալով, այնպէս որ հնար եղաւ 60 օրուան մէջ, նոր եկեղեցի մը շինել յանուն Ս. Աստուածածնի, և յարակից վանք մը լատին ոճով, և այն տեղ հաւաքել Քռնեցիէն շահուած վարդապետները, որոնցմէ 12'ը անունով յիշուած են, և են. Յակոբ Քռնեցի, Մարգար Օձոպեցի, Հայրապետ Եօթնաղբիւրցի, Յովհաննէս Ծուանցի, Սիմէոն Բասենցի, Ներսէս Տարոնեցի, Առաքել Արտազեցի, Լալ Արտազեցի, Գրիգոր Ապրակունեցի, Կոստանդին Կաղզուանցի, Յովհաննէս Կաղզուանցի, և Սիմէոն Խաչէնցի (ԿԱԼ.519)։ Այս առթիւ Բարթողիմէոս Մարաղայի եպիսկոպոսութենէն Նախիջևանի արքեպիսկոպոսութեան բարձրացաւ, և ճանչցուեցաւ իբրև գլուխ և առաջնորդ նոր կազմուած միաբանութեան, որուն լատին բառով Ունիթոր (Unitor) անունն ալ տուաւ, որ կը նշանակէ Միաբանող, Հայ եկեղեցին Լատինին հետ միացնելու իմաստով։ Յատուկ կանոնագրութիւն մըն ալ կազմեց Ս. Օգոստինոսի կոչուած կանոնին հետևողութեամբ, որ Դոմինիկեանց կանոնին ալ նախատիպը եղած էր, որով Քարոզիչ Դոմինիկեանց ճիւղ նկատուեցաւ Միաբանող Հայոց միաբանութիւնն ալ, որոնք Դոմինիկեանց սքեմն ալ առին, ճերմակ կապայով ու սև փիլոնով, և պապական հաստատութեամբ ալ վաւերացուցին իրենց կանոնագրութիւնը (ԿԱԼ.512)։ Գլխաւոր և առաջին ջանքերնին եղաւ լատին գիրքեր հայացնել, թէ միտքերը գրաւելու, և թէ նոր դրութիւնը ամրացնելու համար, և ոչ միայն կրօնական գիրքեր թարգմանեցին, այլ և լատին ծիսարաններն ալ հայերէնի վերածեցին, և կիրառութեան մտցուցին իրենց շրջանակներուն մէջ։ Այդ աշխատութեանց մէջ Բարթողիմէոսի օգնեց Եղբայր Պորտիոս (Frater Portius) անուն հայագէտ փրանկիսկեան կրօնաւոր մըն ալ (ԿԱԼ.512)։ Իսկ Եսայի Նչեցին իւր ալեւորեալ տարիքին մէջ, ցաւով տեսաւ Քռնեցիին ընթացքը, և յատուկ գրութեամբ աշխատեցաւ զայն խրատե՛լ և անոր մոլեռանդութիւնը մեղմացնել, եթէ ոչ իսպառ կասեցնել, յանձնարարելով ու կոչել յանդիման մրցող չինականաց (ՁԱՄ.Գ.327)։ Ըստ այսմ կամայական պէտք է կարծել ոմանց ըսելը, թէ Նչեցին իւր կեանքին վերջերը միտքը փոխած և լատին կրօնաւորի տարազ առած ըլլայ (ՍԻՆ.132), մինչ յայտնի են լատին եկեղեցին ջատագովողներուն դէմ անոր դրած զանազան թուղթերը (ՍԻՆ-132)։

**1275.** Յակոբ կաթողիկոս ալ պէտք տեսաւ գրել Քռնեցիին, 1332 մարտ 6'ին, ուր թէպէտ չդատապարտեր

**ՀԱԿԱՌԱԿ ՋԱՆՔԵՐԸ**

գիտութեանց փափաքով օտարներու դիմելը, այլ կը զգուշացնէ օտարամուտ ծէսերու և դաւանութիւններու կիրառութիւնը (ՍԻՆ.384)։ Հակառակ այդ խրատներու Ունիթոր միաբանութիւնը բուռն գործունէութեան ձեռնարկեց, անարգելով

*ինչ որ հայածէս սովորութիւն էր, մոլորութիւն համարելով ինչ որ հայադաւան վարդապետութիւն էր, մինչեւ իսկ անվաւեր ու չեղեալ նկատելով ինչ որ Հայ եկեղեցիէ պաշտուած խորհուրդ էր։ Բարթողիմէոս եղաւ այդ սկզբունքներուն հիմնադիրը, բայց այդ երեւէն նեղութեանց հանդիպեցաւ, և վերջէն ճարտար կերպով ջանաց ծայրայեղութիւնները առժամաբար չափաւորել։ Այսպէս անցան Ունիթորներու առաջին երեք տարիները 1330'էն 1333, որ տարին վախճանեցաւ Բարթողիմէոս օգոստոս 15'ին, իրեն յաջորդ ցուցնելով Յովհաննէս Քռնեցին։ Եսայիի մահն ալ նոյն միջոցին տեղի ունեցած է ալեւորեալ տարիքի մէջ* (ՍԻՆ. 384), *թէպէտեւ ոմանք մինչեւ* 1338 *կը յետաձգեն նորա վախճանը* (ՍԱՄ· 168)։ *Կարնոյ եպիսկոպոս մըն ալ կը յիշուի Գրիգոր անունով, բաժակին ջուր խառնելու համար ժողովուրդէն սպանուած* ,1326 *տարին* (ՍԱՄ. 167)։ *Սակայն այդ թիւին դեռ Ունիթորներ ոյժ չունէին, ուստի կամ ուղղելու է գրուած թուականը, և կամ Գրիգորի բռածը անձնական նախաձեռնութիւն մը կարծելու է։*

**1276.** *Երբոր Հայաստան նոր եղելութեանց երեւէն կը յուզուէր, Կիլիկիա ալ աղմկալից դիպուածներու ասպարէզ կը դառնար։*

**ԼԵՒՈՆԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ**

*Օշին թագաւորի նշանակած խնամակալութեան տասնամեայ պայմանաժամը կը լրանար* 1329'*ին, և Լեւոն իւր քսաներորդ տարին թեւակոխելուն պէս, բուռն կերպով ձեռք կ'առնէր գործերը, իբրեւ մէկ մը որ սաստիկ ճնշումէ ազատելով յախուռն գործերու կը ձեռնարկէ, և երկար ատեն սրտին մէջ զսպուած ցասումն ու վրէժխնդրութիւնը յանկարծ դուրս կը պոռթկացնէ։ Իւր առաջին գործը եղաւ ձերբակալել տալ խնամակալ Օշին Պայլը, որ իւր մօրեղբայրն ու աներն էր միանգամայն։ Խնդրակները անոր կը հանդիպին Ատանայի մօտ, երբ Տարսոնէ Սիս կու գար, և կը բանտարկեն Մօրօթուվանքը։ Անկէց կ'անցնին ձերբակալել միւս խնամակալ Կոստանդինը, Օշինի եղբայրը, Լեւոնի գիւղին՝ Թերեւս Լեւոնկլայի մէջ, և կը տանին եղբօրը փակուած վանքը Ատանայի մօտ, և մէկ օրն ողորմէին ջերկեան, որ էր* 1329 *յունուարի* 26 (ՍՄԲ· 131), *հինգշաբթի օր։ Անեցիին շարունակողը կ'աւելցնէ, թէ Լեւոն սպանչայներուն գլուխները ընծայ ղրկեց, Օշինինը Եգիպտոսի Նասր սուլտանին, և Կոստանդինինը Դաւրէժի Պուսայիտ խանին* (ՍԱՄ· 138)։ *Ժամանակակիցներ կ'աշխատին Լեւոնը չքմեղացնել, թէ եղան է որդերեյ իշխանացն և է տէր որոնց, թէ խորհեալ էին բառնալ զնա, և ինքեանք թագաւորել* (ՍԱՄ· 138), *կամ թէ չար բերդեր ազգանք առին, որ չէր իւրեանց անձանց ազգանք* (ՍՄԲ. 131), *կամ թէ ազանեալ էր զհայրն արքային, Օշին թագաւորը, որբացեալ նմա քեղ մահու* (ԴԱՐ· 30)։ *Բայց մենք առանց ուզելու Օշին խնամակալի կատարած բռնութեանց* (§ 1270) *պաշտպան կանգնիլ, պէտք է դիտել տանք, որ եթէ Օշին Լեւոնը մեռցնել ուզած ըլլար, տասը տարի չէր սպասեր՝ մինչեւ անոր չափահաս ըլլալը, և թէ նոյն իսկ գրոյցներու իրարու անհամաձայն ըլլալը կը ցուցնէ, թէ իրական չեն տրուած պատճառանքները, այլ իսկութիւնը ծածկելու համար կազմուած յերիւրանքներ են։ Հետեւաբար պիտի չկարենանք համաձայնիլ յայտարարելու թէ, Լեւոն թագաւոր սպան և է նոցա որենքէն* (ՍՄԲ. 131)։ *Մանաւանդ որ անոնց գլուխները ընծայ ղրկելու պարագան, աւելի հեռու միտքեր կը ցուցնէ, կերպով մը անոնք զոհելով, թշնամիներու առջեւ զինքն արդարացընել, վերջին անգամ մղուած պատերազմներուն համար։ Բայց ասկէ ալ աւելի հաւանական կ'երեւի, ազդեցութեան լուծէն ազատ մնալու փափաքը, ազատ կերպով իւր կիրքերուն և ձգտումներուն ծառայելու համար։ Որովհետեւ աները սպաննել տալէն ետքը, անոր աղջիկն ալ եղան, զթագաւորին էր Ալիծը, յաղագս աղտեղի գործոց նորա* (ՍԱՄ. 138), *որոց ստուգութիւնը շատ կեղակարծ է։ Զի եթէ ճշմարիտ ալ ըլլար, սպանութիւնը չէր արդարանար, քանի որ ոչ մի պարագայ պատմուած չէ։ Նկատելի է նաեւ որ անմիջապէս սպանութենէ ետքը՝* 1331'*ին երկրորդ ամուսնութեան կ'անցնի Լեւոն, Սիկիլիոյ Փրեդերիկոս Ա թագաւորին աղջիկ և Կիպրոսի Հենրիկոս Բ թագաւորին այրի, Կոստանդիա-Եղեոնորայի հետ* (ՍԽՍ. 363), *որուն տրուած Ըռեֆար անունը* (ՍՄԲ. 132) *յայտնի չփոթութիւն է՝ հօրը Փրեդե-*

րիկոս կամ Ցրեւերիք անունին աղաւաղումը։ Ամուսնութիւնը տարւոյն առաջին կէսին մէջ կատարուած պիտի ըլլայ, զի իբր կանուխէն եղած կ'ենթադրուի 1331 Նոյեմբեր 24'ին գրուած պարգեւագիրին մէջ (ՍիՍ. 363)։ Յակոբ կաթողիկոս դեր մը ունեցած չերեւիր այդ գործողութեանց մասին, բայց և ոչ կրցած է Լեւոնը զսպել իր անտեղի ձեռնարկներուն մէջ։

**ԼԱՏԻՆԱՄՈԼ ՁԳՏՈՒՄՆԵՐ**

1277. Լեւոնի կատարած սպանութեանց և ամուսնութեան հետեւանքն եղաւ քայլ մը եւս յառաջել Սիսի արքունիքին՝ լատինական կազմութիւն և կերպարան տալու մէջ, գրեթէ բոլոր, գոնէ գլխաւոր պաշտօնները բուն Լատիններու յանձնելով, և լատին կրօնաւորներու առջեւ բանալով ամէն դուռները։ Անկէ առաջ եկած է քաղաքական իշխանութեան ձեռքով եկեղեցական գործերու վրայ բարդուած ազդեցութիւնը, քանի որ արտաքին վտանգներու աճելովը և ներքին զօրութեան նուազելովը, ամէնուն սիրտին վրայ ճնշող կէտը վտանգեալ կացութիւնը պաշտպանելու ջանքն էր, և միայն Արեւմուտքէ կը յուսային օգնութիւն գտնել։ Արդէն Լատիններու հետ սերտ կապուած ըլլալով՝ դրացի արեւելեան պետութեանց հետ հաշտ կացութիւն մը կազմելու ակնկալութիւնն ալ կորուսած էին։ Լեւոնին առաջին գործերէն մին եղաւ, իր մօտ հրաւիրել իր հօրաքեռորդիները, Օշին Պայլէն աքսորուած Լուսինեան եղբայրները, որոնք Հռոդոս կը մնային (§ 1270)։ Ջիւանի կը յանձնէր պայլութիւնը, Պեմունդի տուաւ Կոռիկոսի իշխանութիւնը, իսկ Գուիտոն իր մօրաքրոջ Ռիթա կայսրուհւոյն պաշտպանութեամբ Յունաց կայսեր կողմէ Աքայիոյ կուսակալ նշանակուած էր։ Բաղդին լատին իշխան մըն ալ մարաջախտ, և Պեմունդ մըն ալ սենեսջալ անուանուեցան, իբր թէ այս կերպով Հայեր պիտի կարենային Լատինները շահիլ և փութացնել անոնց օգնութիւնները։ Բայց տակաւ Կիլիկիոյ Հայ թագաւորութիւնը կերպարանափոխ կ'ըլլար, և թէ քաղաքականապէս և թէ եկեղեցականապէս իր հայկութիւնը կը մերկանար, լատինական երկրի մը կերպարանը կ'առնէր, առանց իսկ բոլորովին լատինութեան անցնելու, որուն կ'ընդդիմանար ազգային զգացումը, և ժողովուրդին սիրտին մէջ արմատացած ինքնութեան գաղափարը։ Այդ ընդդիմութեան գլխաւոր գործիչներն էին, նոյն իսկ Հայոց կաթողիկոսները, որ չկարենալով քաղաքականապէս կազմակերպուած դրութիւնը ջնջել, կ'աշխատէին գոնէ հնարաւորութեան սահմանին մէջ եկեղեցական աւանդութեանց պահպանութիւնը ապահովել։ Նոյնինքն Յակոբ կաթողիկոս, Անաւարզեցիին քեռորդին և անոր հետեւողը, պահ մը կանգ կ'առնէր իր ուղղութեան մէջ, չհանդուրժելով մինչեւ վերջին ծայրը տանիլ լատինամոլութեան հետեւողութիւնը։ Այդ շփոթ և կէսակէս կացութիւն տուեց Աղթարմայ անունը, որ իսկապէս հռոմէադաւան ու կաթողիկ ըլլալէ տարբեր իմաստ մը ունի, և լոկ հակամէտ և ջանացող ըլլալ կը նշանակէ, որ է տիրապէս անորոշ կացութիւն մը, և այս անունով կոչուեցան Կիլիկիոյ թագաւորութեան վերջին միջոցին Հայերը։ Անոնք տիրապէս հռոմէադաւան չելան, ինչպէս ալ այժմեան հռոմէադաւանները ջանան անոնք իբր իրենց նախնիքը ցուցնել, որովհետեւ Հայ եկեղեցիէն չելան, և ոչ ալ զայն հիմնապէս և ամբողջապէս այլայլել յաջողեցան, Լատիններու մօտեցան, անոնց հետ ապրեցան, անոնց գործակցեցան, համաձայնելու ձեռնարկեցին, բայց հայազգի և հայադաւան ըլլալէ չդադրեցան, Հռոմէադաւան Հայեր չեղան ու չկոչուեցան, այլ իրենց անորոշ կացութեան յատկանիշն եղաւ Աղթարմայ կոչումը։

**ՔՈՆԵՑԻԻՆ ՑՈՒՑԱԿԸ**

1278. Կատարեալ հռոմէադաւան եղան Ունիթօր կրօնաւորները, իրենց աշակերտներուն հետ, որք Յովհաննէսի գլխաւորութեամբ կը գործէին Հայաստանի մէջ, և նոյն իսկ Կիլիկիոյ մէջ ալ ճիւղ մը ունեցան Աղթարմաներէ տարբեր։ Բարթողիմէոս Բոնոնիացիի մահուընէ ետքը Քոնեցին անձամբ Հռոմ գնաց, որպէս զի իր մեծաւորութիւնը պապին հաստատել տայ, և իր միաբանութեան ընդարձակուելուն համար միջոցներ ստանայ։ Այնտեղ լատին կրօնաւորներու կ'ընդայն ու

սովորութիւններն ալ տեսնելով, աւելի բուռն կերպով վառուեցաւ անոնց համե-մատ կազմակերպել Հայ եկեղեցականու-թիւնը (ԿԱԼ. 520), որուն մէջ եթէ զեղ-ծումներ ալ կային, անոնք ոչ թէ սկզբուն-քի կամ կանոնի, այլ պատահական հան-գամանաց և դժուարութեանց հետեւանք-ներն էին։ Յովհաննէս ԻԲ պապը, Բարթո-ղիմէոսի օգնականներէն Տփղիսի եպիսկո-պոս Յովհաննէս Անգղիացիին պաշտօն տուած էր Հայ Ունիթոր միաբանութեան վրայ հսկել, ուստի անոր առջեւ Հայ միա-բաններ, յատին ձեւով ուխտադրութիւն կատարեցին, և Յովհաննէս Քռնեցին ճանչ-ցուեցաւ թագաւորական ատենէն կողմէ Թիֆլիսոյ (ԿԱԼ. 521)։ Ասոր վրայ Քռնեցին հարկ տեսաւ շրջաբերական թուղթով մը պէտք եղած հրահանգները տալ ու մեծանալ եղբարցն Հայոց, այսինքն Հայ Ունիթոր կրօնա-ւորներուն (ԿԱԼ. 513—522), զորս աւելորդ կը սեպենք վերլուծել, սակայն հետաքըր-քրական է 19 մոլորութեանց ցուցակը, զորս նա կը վերագրէ Հայ եկեղեցւոյն ու անոր հետեւողներուն։ Ասոնք են, 1. Մի բնու-թեան կ'ըսեն. 2. Ս. յՈրդւոյ բղխում չեն դաւանիր. 3. Վերջին դատաստանէ առաջ արքայութիւն և դժոխք չեն ընդունիր. 4. Քաւարան չեն ընդունիր. 5. Հռոմը գլուխ ամենայն այլոց եկեղեցեացն աշխարհի չեն ճանչ-նար. 6. Լեւոն պապը և Քաղկեդոնի ժողո-վը կը նզովեն. 7. Ծնունդն և ուրիշ տէ-րունական տօները Հռոմայ եկեղեցւոյ կարգա-ցանց համաձայն չեն կատարեր. 8. Պահ-քերը Հռոմի կարգադրութեանց համեմատ չեն պահեր. 9. Եօթը խորհուրդներէն Դրոշ-մը ու Վերջին օծումը չունին. 10. Բաժա-կին ջուր չեն խառներ. 11. Հաղորդութիւ-նը կրկին տեսակներու ներքեւ կը բաշխեն՝ մարմինը արիւնին մէջ թաթխելով. 12. Փայ-տեղէն և խեցեղէն սկիհներ կը գործածեն. 13. Ամէն քահանայ խոստովանութեան խորհուրդ կը պաշտէ, Բայց որոշոյ յօրդելման, այսինքն վերապահեալ մեղքեր չու-նին. 14. Երկու պատրիարքներու կը հնա-զանդին, որոց երկուքն ալ գտանին Ամե-նայն Հայոց կը ստորագրեն. 15. Արեանկ-ցութեան բանութեամբ քահանայ և եպիս-կոպոս կ'ըլլան. 16. Եկեղեցւոյ խորհուրդ-ները դրամով կը վաճառեն ու կը գնեն. 17. Առանց հարկաւոր պատճառի ամուսնալու-ծումներ կը կատարեն. 18. Երախայից և հիւանդաց յատուկ ձէթեր չեն օրհներ. 19. Տղայոց հաղորդութիւն կու տան (ԿԱԼ. 515)։ Ասոնք թուելէն ետքը, կը յաւելու, թէ այլ յոլով մոլորութեամբ, որքն Հայոց Եկեղեցւոյ եղեալ է ճշմարտութեան ճանապարհէն բացեալ ժամա-նակաւ, և թէ վերջապէս Յովհաննէս ԻԲ պապէն ղրկուած լատին կրօնաւորներու ձեռքով Ատանայի ժողովը ուղղութեան դարձաւ (ԿԱԼ. 517)։ Բայց մենք արդէն տե-սանք, թէ ինչպէս հեղինակութենէ զուրկ գումարում եղած է Ատանայի ժողովը (§ 1257)։

**ՊԱՂՈՍ ԵՒ ՊԷԿ ՈՒՆԻԹՈՐՆԵՐ**

**1279.** Քռնեցին և իրեն ընկերները պապէն ստացած քաջալերութեամբ զեղծա-նելով իրենց քարոզու-թիւնները բանադատու-թեանց և Հայ եկեղեցւոյ նախատանաց ալ հասու-ցին, և ընթացան կրկին յեկեղեցեալք և կրկին մկրտեալք, նաեւ այլոց բազմաց կրկին մկրտեցին և կրկին յեկեղեցեցին, հարկաւ հռոմէական դրութեան համեմատ, այսինքն թէական ձեւով, և այն ալ գաղտագողի կերպերով, ոմանց ի բաղնիս, այլոց ի տունս, և այլոց յանդս ջրոց, և ի ծածուկ տեղիս (ՁԱՄ.Գ.331)։ Այդ մոլեգնութեան ձեւերը, զոր առաւե-լաբար կը կատարէին Մարաղայի, Նախի-ջեւանի, Սուլտանիայի և Տփղիսի կողմերը, և մանաւանդ Կաֆայի մէջ, ուր Գեհուա-ցիք կը տիրէին (ՁԱՄ.Գ.328), հետզհետէ տարածեցին Կիլիկիոյ կողմերն ալ, ուր յատկապէս եկած էին Ներսէս Պաղոն և Սի-մէոն Պէկ, որոց առաջինը Ուրմիոյ և երկ-րորդը Կարնոյ եպիսկոպոս եղան։ Այդ եր-կուքը հաւանական կը դատենք նոյնացնել Քռնեցիին առաջին ընկերներէն Ներսէս Տա-րոնեցի և Սիմէոն Բասենցի վարդապետնե-րուն հետ (§ 1274)։ Սիմէոնի Բասենցի ծա-գումը կը բացատրէ Կարնոյ մէջ ունեցած գործունէութիւնը, իսկ Ներսէս թէպէտ տեղ մը ի Տարոն գաւառէ ըսուած է (ԿԱԼ. 519), բայց ուղղակի կ'երեւի յաջորդներն Տարոնա-կարգալ, ինչպէս ուրիշ ժամանակակից յի-շատակարան մը կը գրէ (ՍԻՆ.375)։ Հետե-ւաբար հաւանական չէ Ներսէս Պաղոնի,

ընկ Սսեցի ըլլալը։ Մագումէն անկախաբար կրնան ընդունուիլ ունիթորութեան յարելով կրկին մկրտուած և դարձեալ քահանայ ձեռնադրուած ըլլալնուն մասին տրուած տեղեկութիւնները (ԶԱՄ.Գ-346)։ Եղելութեանց կարգին դառնալով, Ներսէսի և Սիմէոնի երեսէն Կիլիկիոյ ժողովուրդին մէջ սկսած շփոթութիւնները և վտանգաւոր երկպառակութիւնները Յակոբ կաթողիկոսն ալ զայրացուցին, որ Լեւոնն ալ համոզեց վերջ գնել այդ ստնձգութեանց, և քաղաքական պաշտօնեաներուն միջոցով ձերբակալուեցան Ներսէս ու Սիմէոն և անոնց գործակիցները, և այս վերջիններէն ոմանք աքսորուեցան, ուրիշներ բանտարկուեցան, իսկ Ներսէս ու Սիմէոն կաթողիկոսին յանձնուեցան, որ խրատեց ու յորդորեց, զի մի Հռոմէացին յանձանց զնորանոր խոտորութիւնս, և մ՛ լսցէն գործոց կորստեան հոգւոց (ԶԱՄ.Գ. 331)։ Անոնք երեսանց հաւանութիւն յայտնեցին և արձակուեցան, բայց Ներսէս Կանչի գնաց, և Մանաճիհր վարդապետի մը հետ սկսաւ այնտեղ ալ նոր շփոթութիւններ սերմանել։ Կաթողիկոսը ստիպուեցաւ քննիչներ ղրկել, և Ներսէսի խարէական ձեռնարկները յայտնուեցան, և հազիւ կրցաւ ժողովուրդին զայրոյթէն և քարկոծուելու վտանգէն ազատելով Կիլիկիայէ հեռանալ (ԶԱՄ.Գ. 332), միշտ աւելի ատելութիւն շատցնելով սիրտին մէջ Հայոց եկեղեցւոյն դէմ։ Մէկ կողմէն Յակոբ կաթողիկոս պապին կը գրէր, որ խրատէ իրենները և գրգռութիւնները արգելու (ԶԱՄ.Գ. 332), իսկ միւս կողմէն Ունիթորները պապին կը գրէին, թէ Հայոց կաթողիկոսն ու թագաւորը հռոմէադաւանները կը հալածեն, և անոնց եկեղեցիները կը կործանեն (ԶԱՄ.Գ. 328)։ Վերջին տարիներու մէջ պատերազմական աղէտներ ալ անպակաս եղած էին, և թէպէտ Հայեր պատահաբար յաջողութիւններ կ'ունենային, սակայն 1335'ին մեծ արշաւանք մը հանած էր Նասր սուլտան յաւուրս Ռնչոց, և է տօնէ Համբարձման Քրիստոսի, որ այն տարի մայիս 25'ին կ'իյնար։ Մամեստիան, Ատանան և Տարսոնը կ'աւերէր ու կը քանդէր, երբ Հայերը յանհոգս կային, և անխնայ կը կոտորէր ժողովուրդը, Լեւոնն ալ ձերբակալելու նպատակով (ՍԱՄ. 159)։ Ասոր վրայ պապին կողմէն 30,000 ոսկւոյ նպաստ մը կը սահմանուէր, Գաղղիոյ թագաւորին տուած 10,000 ոսկւոյ հետ (ՄԽՍ. 391). սակայն Ունիթորներուն ամբաստանութեանց վրայ, պապը կ'արգիլէր զի զայն Երեւան Հռոմ ու- կէն մ՛ տացեն, մինչեւ որ Հայերուն ընթացքը քննուի (ԶԱՄ.Գ. 328)։ Աւելի խօսուն փաստ մը պէտք չէ պապերուն միտքն ու Հայերու պաշտպանութեան համար ցուցուած ջանքին, ներքին և իսկական իմաստը ճշդելու, և Ունիթոր միջնորդներուն հոգին նկարագրելու։

1280. Հայերու և Լատիններու յարաբերութեանց անպատեհութեանց յականայս կը վկայէ պատմիչն ալ խոստովանելով, թէ երբ Լատիններ ֆրանգ և ըրկ կամիացուցանեմք մարտնչէին ընդ տաճկին, Եգիպտացիներ սրով և հրով անողորմ կոտորածս առնէին ի Հայս (ԶԱՄ.Գ. 334)։ Նասրի զօրավարները հրամայուած էին, զի ըմբռնել կարասցեն զթագաւորն Լեւոն (ՍԱՄ. 159), անոր համար սա կը պարտաւորուէր, Սիսը թողուլ, և անծանօթ կերպերով լեռներ ու ձորեր թափառիլ. և միանգամայն նամակ նամակի և դեսպան դեսպանի ետեւէն հասցնել Յովհաննէս ԻԲ'ի յաջորդ Բենեդիկտոս ԺԲ պապին։ Իսկ պապը կը բաւականանար ցաւակցական և մխիթարական գիր մը յղել Կոստանդիա թագուհիին 1336 ապրիլ 16'ին գրուած, և լատին իշխաններէ ոմանց յորդորականներ կը գրէր, բայց տեղէն շարժուող չէր գտնուեր։ Լեւոն վերջապէս յուսախաբ և նեղուած, թէպէտև իր առաջին պատուիրակները մերժուած էին, և Բաղդին մարաջախտ դեսպանն ալ բանտին մէջ մեռած էր 1336 դեկտեմբեր 12'ին, բայց վերջապէս կը պարտաւորուէր, նորէն բանակցիլ և ծանր պայմաններով հաշտութիւն կնքել Նասրի հետ 1337'ին։ Այսու բերդը և Ջահան գաւառը տալէ զատ, յանձնառու կ'ըլլար, զի յանձնեաց մ՛ առասցէ զլեզուն ու կամ զնաւ զին առ քահանայապետն Հռոմայ, որ է ըսել, Լատիններու հետ յարաբերութիւնները խզել, ինչ որ ուխտեցաւ խոստանալ երդմամբ, և այս կերպով Սիս դարձաւ, և նորէն թագաւորութեան գործերը

ՀԱՅԵԳԻՊՏԱԿԱՆ ՀԱՇՏՈՒԹԻՒՆ

ձեռք առաւ (ՉԱՄ. Գ. 337), գրեթէ երկամեայ ատենդական կեանքէ ետքը։ Այս եղելութեան նկատմամբ պայլին ունեցած մեծ հոգատարութիւնը եղաւ 1338 մայիս 1'ին գրած նամակովը (ՍԻՍ. 559), Լեւոնը երդումին կապէն քակել, պատճառաբանելով թէ «ոչ կամաւ այլ ի հարկէ» բռնած է այն երդումը, ուստի վստահութեամբ կ'ապահովցնէր Լեւոնը, թէ «Տաճկաց լիցիս ազատ յերդմանէդ յայսմանէ, և ոչ լիցի քեզ ինչ մեղք ի պահելոյ զայդ» (ՉԱՄ. Գ. 328)։ Իսկ նիւթական և զինուորական օգնութիւն չէր հասներ տակաւին։ Այս կերպով Լատինաց յարաբերութիւնները նորէն յայտնի վտանգի կ'ենթարկէին Հայերը, որոնք եթէ հաւատարմութեամբ մշակած ըլլային Եգիպտացւոց հետ բարեկամական յարաբերութիւնները, կրնային նորանոր վտանգներէ զերծ մնալ, և ազգային իշխանութիւնը պահել սուլտաններուն հովանաւորութեան ներքեւ։ Բայց այլեւս արքունիքը Հայ տարրով կամ Հայ մտածմունքով չէր կառավարուեր, բուն Լատիններ էին որ գործի գլուխ անցած և տէր եղած էին քաղաքական իշխանութեան, և ճնշում կը բանեցնէին եկեղեցական իշխանութեան վրայ։ Բայց վերջապէս երեք տարւոյ չափ միջոց մը՝ քիչ ու շատ հանդարտ անցաւ շնորհիւ հաստատուած հաշտութեան, թէպէտ Լեւոն և իւր պալատականներ Արեւմուտքի հետ յարաբերութիւնները չէին դադրեցներ, բայց կը զգուշանային յայտնի և համդիմապէս ընել, և որչափ հնար էր՝ ծածուկ միջոցներ և գաղտնի կերպեր կը գործածէին։

1281. Երբոր Կիլիկիոյ մէջ այս անցուդարձերը կը կատարուէին, Հայաստան ալ հանդարտ չէր։ Պուսայիտ խան կը մեռնէր 1334'ին և կը յաջորդէր Արփա խան, որ քրիստոնեայ կ'ըսուի, և թերեւս այդ պատճառով, Պուսայիտի քեռին Ալի փաշա, զայն կը սպաննէր 6 ամիս ետքը, և Մուսի անուն անզօր մէկ մը խան անուանելով, ինքն կը տիրանար գործերու, և քրիստոնէից դէմ ատելութեամբ կը հրամայէր «ջնջել զչէնկէզեանս», ինչպէս որ տեղ տեղ ալ կը գործադրուէր։ Այս պատճառով Զաքարիա

**ԱՂԹԱՄԱՐԻ ԱԹՈՌԸ**

Սէֆէտինեան Աղթամարայ կաթողիկոսը, պարտաւորուեցաւ անձամբ երթալ Ալի փաշայի մօտ, և իւր ազդեցութեամբ'ու համոզկեր խօսքերով յաջողեցաւ հրամանին անատեղութիւնը ցուցնել, և «և ետոյ զոր հաճէր» (ՍԱՄ. 159)։ Այդ եղելութիւնը պէտք է դնել 1335'ին, վասնզի յաջորդ տարւոյն 1336'ի սկիզբները Զաքարիա կը մեռնէր, և իրեն կը յաջորդէր իւր քեռորդին Ստեփանոս, Հաւաքարանին համեմատ (ՕՕ.ԲԻՁ. 1193), մինչ ուրիշ յիշատակարանի համեմատ, Զաքարիա իւր կենդանութեան, Դաւիթ եղբայրը ձեռնադրած է իբր յաջորդ, և նա իւր Կուրճիբէկ և Սէֆէտին եղբայրներովը աշխատած է աթոռին պաշտպանութեան և պայծառութեան (ԱՐՃ.366)։ Մեր տեսութեամբ յայժ սկար է Հաւաքարանի հեղինակութիւնը հնագոյն ժամանակներու համար։ Վերոյիշեալ Զաքարիայի կը վերագրուի կողոպուտի օրէնքը, որով եպիսկոպոսներու և վարդապետներու և իշխանաւորներու գիրքերը և եկեղեցական զգեստները ու բոլոր հագնելիքները աթոռին պիտի անունէին իբրեւ հոգեբաժին։ Միեւնոյն 1336 տարին, Ալի փաշան ալ սպանուեցաւ Խալիթ աղայէ մը, որ ընդունուած է իբր նոյնինքն Հասան խան, Պուսայիտի որդին, որ թէպէտ իբր մեծ խան ճանչցուեցաւ, այլ տէրութիւնը բազմաթիւ ինքնիշխան խաներու մէջ բաժնուեցաւ, և անիշխանութիւնը տիրեց մինչեւ Լանկթիմուրի երեւնալը 1360'ին։

1282. Հայաստանի Հիւսիսային կողմերը տակաւ կը յառաջանային Ունիթորները, ո-

**ՈՒՆԻԹՈՐՆԵՐ ԵՒ ԵՐՈՒՍԱՂԷՄ**

րոց հետեւած կ'ըսուին 3 քաղաքներ և 30 գիւղեր, (ՍԻՍ. 386)։ Իրենց մեծ գործունէութիւնը կայացած էր թարգմանութեանց մէջ, որոնցմէ 20 կտորներու ցուցակը կազմած է Ալիշան (ՍԻՍ. 384), բայց ինքն ալ չէ կրցած չխոստովանիլ, թէ հայերէնի խանգարման աղբիւր եղած են այդ թարգմանութիւնները։ Հայերէնագէտ Լատիններուն տկարութիւնը մէկ կողմէն, և լատինագէտ Հայերուն բնագիրներու բառ առ բառ հետեւելու խղճմտութիւնը միւս կողմէն, տարօրինակ լեզու մը ստեղծած են, որ բաւական ընդար-

ձակութիւն գտած և տարաբախտ ազդեցութիւն ունեցած է դարուս մէջ և առյապայ։ Ալիշան կը ջանայ արդարացնել ըսելով, որ Բեղէտ Բերոյան Ունիթորները ի դորդոմբենէ մեղուին խորհանց և ի հայրենի ծխից, այլ ող ակաւ օտարեցան յիմաստս կրծակոնս և թարյակոնս, որովք փերողընցեին տան ընհոլք յամառեղին (ՍԻՍ. 385), սակայն առաւելութիւնը միջին դարուն Դպրոցական կոչուած, այսինքն Սխոլաստիկեան ոճն էր, որ իմաստութենէ աւելի իմաստակութեան կ'առաջնորդէր։ Նոյն միջոցին Երուսաղէմի պատրիարքութիւնը հոգ կը տանէր ազգային ստացութեանց պաշտպանութեան և ուխտաւորներու մխիթարութեան, չարունակ նեղութիւններ կրելով Եգիպտացի պաշտօնականներէն և տեղացի ժողովուրդէն։ Նակայն Նասր սուլտան չէր վարաներ իրաւացի դիմումներու անսալ, Ս. Յակոբի պարսպին նորոգութիւնը կ'արտօնէր 1339'ին, և Ս. Յարութիւն մտնողներէն ու ելլողներէն աւելորդ տուրք մը առնողները կ'արգելէր 1341'ին։ Երուսաղէմի պատմիչը այդ գործողութիւնները կը դնէ Բարսեղ պատրիարքի ժամանակ (ԱՍՏ. Ա. 207), մինչ ցուցակագիրը, Վարդան պատրիարք մը կը դնէ այդ միջոցին, և Յովհաննէս մըն ալ Բարսեղէ առաջ (ԲԱՌ. 45)։

**1283.** Կիլիկիա տակաւ առ տակաւ իր առժամեայ հանդարտութիւնը կը կորսնցնէր։

**ՅԱԿՈԲԻ ՀՐԱԺԱՐԻԼԸ**

Լեւոնի և իբրայնոց Արեւմուտքի հետ յարաբերութիւնները որչափ և գաղտնի, չէին կրնար իսպառ ծածկուիլ, և Եգիպտացւոց ականջը չհասնիլ, որոնք միշտ անվստահութեամբ կը նայէին Կիլիկեցւոց անհաստատ ընթացքին վրայ։ Հետեւաբար 1340'ին առեւնները ազդարար արշաւանք մը հասաւ Կիլիկիոյ կողմերը, որ սահմանագլուխին վրայ 16 բերդեր և աւաններ զարկաւ, և աւելին ալ սպառնացաւ ընել, եթէ Կիլիկեցիք ձշգիւ և խստիւ չի յարգեն հաշտութեան գլխաւոր պայմանը։ Ասկէ ծագեցաւ կարծիքներու տարբերութիւն մը և ներքին գժտութիւն մը, որ մինչեւ կաթողիկոսի փոփոխութիւնը յառաջեց։ Լեւոն արշաւանքին վախէն ու սպառնալիքէն ազդուած պահ մը, կը միտէր Արեւմուտքի հետ յարաբերութիւնները դադրեցնել, սակայն Լատին պալատականներ, Լատին կրօնաւորներ, և լատինամոլ Հայեր կ'ընդդիմանային։ Չէ՞ որ կրնար ըլլալ որ յարաբերութիւնները դադրեցնելնին՝ իբր Հռոմէ հեռանալ մեկնուէր։ Չէ՞ որ, կ'ըսէին, իբրեւ թոյլանալոյ համարիմք, և կատեն ի վերայ մեր ամբաստանութիւնս իբրեւ ի վերայ հերետիկոսաց։ Եպիսկոպոսներ և իշխաններ իրարմէ զատուեցան, քանի որ վերջինները բուն կամ կէս Լատիններ էին, մինչ եպիսկոպոսներուն սիրտին մէջ չէր կրնար բոլորովին մարած ըլլալ ազգային եկեղեցւոյ զգացումը։ Հակառակութեան հետեւանքը եղաւ Յակոբի կաթողիկոսութենէն դադարիլը, և նոր կաթողիկոսի ընտրութիւնը։ Այդ փոփոխութեան պատճառն ու հանգամանքները բոլորովին մթին կը ներկայանան, վասն զի չունինք ձեռուընիս սկզբնագիր պատմիչ մը, որ զայն մեզ բացատրէ, գոնէ մակաբերութեան աղբիւրներ ներկայէ։ Ալիշան ալ որոշ բան մը չէ գտած, երբ կը գրէ, թէ Ներսափոյն եւս վեց կրօնից և ծխից ի տաճնայի կոչոցանէին զերկաւին եւ աբոսա աղէին՝ և զվիճակելոյն ընդ նոսա, վասն որոյ հարկ համարեցան իջուցանել զՅակոբ ի կաթողիկոսութենէն (ՍԻՍ. 147)։ Անկէ առաջ Չամչեան գրած էր, թէ ի ստորկանալ վիճմանց և ի յաճախել աւելի դեռեւս փրփռութեանց ի թանարկաց արանց, կշտամբեաց Յակոբ կաթողիկոսն զԼեւոն արքայ և սպառնացաւ նմա, ընդ որ ցասուցեալ Լեւոն ընկեց զնա յաթոռոյ իշխանութեան (ՉԱՄ. Գ. 339)։ Երկուքն ալ աղբիւր մը չեն ցուցներ, որով միայն իրենց կարծիքը բացատրած կ'ըլլան, և մենք ալ իրաւունք կ'ունենանք մեր տեսութիւնները բացատրել։ Երբոր երկու ընդդիմադիր ուղղութեանց պաշտպաններ կը նկատուին Լեւոն ու Յակոբ, յայտնի կ'ըլլայ թէ Յակոբ պիտի ընդունուի իբր եպիսկոպոսներու խումբին գլուխը, այսինքն եգիպտական հաշտութեան պայմանը յարգելու՝ և Արեւմուտքի հետ յարաբերութիւնները խզելու կողմին հետեւող, ինչ որ Ունիթորներուն առիթ տուած է Յակոբը ամբաստանել իբր հռոմէադաւանութեան հալածիչ (ՉԱՄ. Գ. 344)։ Ասոր հակառակը Լեւոն շրջապատուած էր Լատին և կէս լատին պալատա-

կաններէ, որոնք իրենց ուղղութիւնը կը պնդէին։ Եթէ եկեղեցական խումբը Լեւոնի կողմը չէր, ուրեմն Լեւոնի գլուխն չէր իւր սաստով ու զայրոյթով կաթողիկոս մը վար առնել, և ուրիշ մը օծել տալ, և լոկ քաղաքական իշխանութեան զօրութեամբ ճոխանալ։ Աւելցնենք որ Յակոբի համար հալածուած ու անարգուած ըլլալու պարագայ մը չյիշուիր, և ոչ ալ իւր վրայ գործադրուած են բանտի և չղթայի խստութիւնները, զորս Հեթում գործածեց Կոստանդինի վրայ (§ 1184)։ Յակոբ իւր պատուովը հեռացաւ աթոռէն, և նորէն իւր պատուով աթոռ դարձաւ, երբոր իրեն տեղ անցնողը մեռաւ. հետեւաբար ոչ գահընկէցութիւն, այլ հրաժարական պէտք է ընդունիլ Յակոբի դադարելուն մէջ։ Եթէ գահընկէցութիւն ընդունէինք, պէտք էր ազգային եկեղեցական ժողով մըն ալ ենթադրել, որ բնաւ յիշուած չէ, և առանց ժողովական վճռոյ լոկ արքունի հրամանով գահընկէցութիւնը կանոնական չէր ըլլար, և տեղը անցնողն ալ օրինաւոր կաթողիկոսաց շարքը պիտի չանցնէր, ինչպէս չանցաւ Դիոսկորոս Սանահնեցին (§ 835)։

1284. Այդ տեսութիւններով և յառաջ բերուած պատճառաբանութիւններով՝ իրաւունք կ'ունենանք պնդել, թէ Յակոբ կաթողիկոս, ոչ գահընկէց, այլ հրաժարեալ մըն է։ Ինքն

ՀՐԱԺԱՐԵԼՈՒՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ

նախապէս Անաւարզեցիին հետեւողն ու շատ մօտէն գործակիցն եղած էր, անոր քեռորդին ըլլալով, և եթէ նոյնացնենք զինքն Կապանի եպիսկոպոս Յակոբի հետ, անձամբ Հռոմ գացած և յարաբերութեանց միջնորդ եղած էր։ Բայց հայրապետական աթոռ բարձրանալէն և պատասխանատու դիրք գրաւելէն ետքը, հետզհետէ փորձով տեսած էր այդ յարաբերութեանց անօգտակարութիւնը, մանաւանդ թէ վնասակարութիւնը, զի ոչ միայն նպաստ և օգնութիւն չէր պտղաբերեր, այլ և Եգիպտացիները կը գրգռէր և երկրին աւերման և ժողովուրդին քայքայման և եկեղեցւոյն վնասներուն պատճառ կ'ըլլար։ Եգիպտացւոց հետ կրնքուած հաշտութենէն ետքը, որուն հարկաւ աշխատակցած էր իւր նախորդին հետեւելով (§ 1269), Յակոբ նոր կացութեան պաշտպանն էր եղած, Լեւոնն ալ իւր կողմը յանկուցանելու աշխատած, զուցէ և զայթակղած էր Բենեդիկտոսի թելադրած և նուիրագործած ուխտադրժութենէն, որով Լեւոնի տուած երդումը կը քակէր և կը լուծէր։ Յակոբի դժուար էր, առանց թագաւորին գործակցութեան արդիւնաւորութիւն մը ունենալ, զուցէ ալ իրեն կ'առարկէին իւր նախընթաց գործերը։ Հետեւապէս իրեն ուրիշ ճանպայ չէր մնար, բայց եթէ ձեռուընները լուալ և մէկ կողմ քաշուիլ, ինչպէս ալ կը գործադրէ 1341 տարւոյ սկիզբները, և կաթողիկոսութենէն հրաժարելով, աթոռէն կը հեռանայ, ապագային պատասխանատուութենէ զերծ մնալու համար, թողլով որ ուրիշները գլուխ ածնեն և պատասխանատուութիւնն ալ ըստանձնեն։ Յիշատակագիր մը Յակոբի համար կ'ըսէ, թէ էր յոյժ ջերմեռանդ սիրող եկեղեցւոյն Հռոմայ, բայց յիշատակարանը գրուած է 1331'ին (ՏԱՇ-741), կաթողիկոսութեան առաջին տարիները, երբ տակաւին իւր միտքը չէր պղտորած 1335'ին դառն փորձառութենէն ետքը։ Արդէն նոյն իսկ հրաժարականով քաշուիլն ալ Հռոմի հետ բացարձակ պայքարէ խուսափելու միջոց մըն է եղած, որով եթէ կրնանք պաշտպանել Յակոբի ուղղամտութիւնը, չենք կրնար ծածկ'ել անոր սկարամտութիւնը։

1285. Ժամանակակից դէպքերէն առաջին կը ներկայանայ Ամենաւագի նահատակութիւնը, որ կատարուած է 1335'ին։ Բնիկ Դերջանցի էր Ամենաւագ, Գառնբերդակ գիւղէն,

ԱՄԵՆԱՒԱԳ ԴԵՐՋԱՆՑԻ

Թումէրի և Ջամէնի որդի, հողագործութեամբ ապրող։ Պարտատէր այլազգի մը նորա գրաստը բռնի գրաւել ուզած պահուն, եղբօրմէն օգնութիւն կը խնդրէ, և ասոր մերժելուն վրայ սիրտին ցաւը կը յայտնէ ըսելով. որդեօք քրիստոնէութեան է այդ, եւ ոչ ցեղով (ՅԱՍ-Ա.114)։ Այս խօսքը կը բաւէ, որ այլազգին և ընկերները հետեւցնեն, թէ Ամենաւագ քրիստոնէութիւնը ուրացաւ և իսլամութիւնը ընդունեցաւ, և այսպէս կը վկայեն գաւառին Հասան գաւառին և Մահմուտ գաւառապետին առ-

*ջեւ։ Ամէնաւագ միջոց մը թաքչելէն ետքը, նորէն Գառնըերդակ կը դառնայ գործը մոռցուած ենթադրելով, բայց կը ճանչցուի, և դատաւորի առջեւ կը հանուի, իբրեւ իսլամութենէ ետ դարձող մը։ Քանի մը օրեր բանտարկութեամբ, ողոքանօք և սպառնալեօք կը ջանայ դատաւորը, որ իսլամութիւնը ընդունիլ տայ, բայց Ամենաւագի անդրդուելի հաստատամտութեան վրայ մահուան վճիռը կու տայ իբրեւ ուրացեալ։ Ասոր վրայ խըշտանգանօք կը տանին զայն աւանին հրապարակը, և հոն քարկոծելու կը սկսին, և երկաթ ուռով գլուխը ջախջախելով կը սպաննեն։ Մարմինը մերկացնելով փողոցները կը քաշկռտեն, և մինչեւ երրորդ օր անթաղ կը թողուն, ուրկէ վերջ հրաման կ'ըլլայ զայն թաղել։ Նահատակութեան օրը գրուած է մարտ* 10 *ուրբաթ* (ՅԱՍ. Ա. 115), *որ* 1335'*ին ճշդիւ կը պատասխանէ մեծ պահոց երկրորդ ուրբաթին, և յաջորդ կիրակին, մարտ* 12 *եղած կ'ըլլայ թաղման օրը։ Միայն չէ յիշուած թէ որ աւանն էր գաւառին կեդրոնը, ուր դատաւորը կը նստէր և նահատակութիւնը տեղի ունեցաւ, և թէ ուր թաղուեցաւ մարմինը։ Ամենաւագի ծննդավայր գիւղը Գառնըերդակ մինչեւ այսօր կայ, բայց գերեզմանը յայտնի չէ Դերջանի մէջ։*

**1286**. *Նոր Յայսմաւուրքը ապրիլ* 4 *օրուան ներքեւ կը յիշատակէ Մխիթար Սասունցի վարդապետը* (ՅԱՍ. Ա. 148), *զոր հինը դրած է փետրուար* 11'*ին* (ՅԱՑ. 364)։ *Բնիկ Սասունցի ամբարիշտ մարդու մը զաւակ, անոր մահուընէ ետեւ Կերմանից գիւղը փոխադրուած, մօրը մահուընէն ետքն ալ Գայլեձորի վանքին մէջ Ներսէս Տարոնեցիի աշակերտած էր Մխիթար, ուսկից փոխադրուեցաւ Արճէշի Կերմանից վանքը և վերջէն հաստատուեցաւ Մեծոփայ վանքը, և նշանաւոր քարոզիչ մը եղաւ շրջակայ գաւառներու մէջ. նշանաւոր ոչ միայն իր ազդեցիկ խօսքովը, այլ և ողորմած գործունէութեամբը, որուն կը գործածէր գիրքերու ընդօրինակութեամբ շահած գումարները։ Մխիթարի առաւելութիւններէն մին եղաւ հայադաւան ուղղափառութեան պաշտպանութիւնը, անոր համար իրեն դէմ ալ ամբաստանութիւններ յարուցին Ունիթորները, հոգեծնութեան մնացածին վարդապետութիւն մը վերագրելով* (ՉԱՄ. Գ. 343)։ *Սակայն Մխիթար չարունակեց իր քարոզութիւնները և սրբութեամբ վախճանեցաւ Հայոց* 786 *թուին հոռի* 25'*ին հին տոմարով, կամ մեհեկի* 5 *Սարկաւագի հաշուով, յետի բարեկենդանին չորեքշաբթին, ինչպէս կը գրէ հին Յայսմաւուրքը* (ՅԱՑ. 366)։ *Արդ հոռի* 25'*ը ըստ հնոյն կը պատասխանէ փետրուար* 19'*ին, մինչ մեհեկի* 5 *կը համեմատի փետրուար* 11'*ին, իսկ չորեքշաբթին կը յարմարի փետրուար* 19'*ին, և ճշդիւ Առաջաւորաց պահքին յաջորդող չորեքշաբթի։ Ըստ այսմ հարկ կ'ըլլայ* 1337 *փետրուար* 19'*ը, քան թէ փետրուար* 11'*ը, ընդունիլ իբր ճիշդ թուական Մխիթար Սասունցիի մահուան, որ Կերմանեցի անունով ալ յիշուած է* (ՍԻՆ. 136)։

ՄԽԻԹԱՐ ՍԱՍՈՒՆՑԻ

# Տ. ՄԽԻԹԱՐ Ա. ԳՌՆԵՐՑԻ 1341-1355

**1287**. *Երբոր* 1341'*ին Յակոբի յաջորդ մը տալու պէտքը զգացուեցաւ, Լեւոնի կամքը և եպիսկոպոսներու կարծիքը շուտով համաձայնեցան Մխիթար Գռներցի եպիսկոպոսի վրայ, որ Բարձրբերդ գաւառին, Գռների վանքն առաջնորդն էր* (ՍԻՍ. 147), *և ոչ Երզնակ գաւառին Քռնայ գիւղէն* (ՉԱՄ. Գ. 339)։ *Մխիթար ժողովրդական և ծանօթ անձնաւորութիւն պիտի ենթադրուի, ժողովուրդին կողմէն իրեն տրուած Տէր Մխիկ փաղաքշական անունէն հետեւցնելով։ Միւս կողմէն ալ թագաւորին և արքունիքին մօտիկ և հաճոյական անձ եղած ըլլալը կը քաղուի* 1335'*ի աղէտներու միջոցին՝ Լեւո-*

ՆԱԽԸՆԹԱՑՆ ՈՒ ՆՊԱՏԱԿԸ

նի կողմէն Նասր սուլտանին մօտ դեսպան դրկուած ըլլալէն (ՍԻՍ. 559)։ Իսկ իր գործելու կերպովը՝ Մխիթար ըստ ամենայնի մօտիկ եղած է Լատիններու հետ յարաբերութիւն մշակելու դրութեան, ինչպէս որ գործով ալ ցուցած է իր կաթողիկոսութեան բովանդակ ընթացքին մէջ։ Գուցէ իր դեսպանութեան Եգիպտացւոց հետ չյաջողիլը, զինքն ուծացուցած էր անոնց հետ գործ ունենալէ, որով Լատիններու յարաբերութիւնները մշակելէ զատ միջոց չէր գտնէր։ Միայն պէտք է ընդունիլ թէ Մխիթար Լատիններու հետ յարաբերութեան կողմը լինելով մէկտեղ, Լատիններու մոլի հետեւող չէր, որովհետեւ ամէն առթի մէջ իր յարաբերական ոճը՝ Հայ եկեղեցւոյ պաշտպանութեան վրայ հաստատուած է, ինչինչ կէտեր իբր մտացածին և անգոյ մերժելով, և ինչինչ ալ իբր Լատիններուն համամիտ և համաձայն մեկնելով, և կերպով մը միջասահման ուղղութիւն մը մշակելով, թէ Լատինները գոհացնելու և թէ Հայերը չվշտացնելու համար։ Այս տեսութեամբ ժամանակին յարմար անձնաւորութիւն մը նկատուեցաւ, ինչ որ իր ընտրուելուն տեսակէտն ալ կը պարզէ։ Նոյնը կը մեկնէ նաեւ Ունիթորներուն Մխիթարի մօտենալուն շարժառիթը։ Ներսէս Պաղոն, որ Կանչի պատահարէն ետքը խոյս տուած էր (§ 1279), և Սիմոն Պէկ, որ Կիպրոս կը գտնուէր, կը քաջալերուին նորէն գործի ձեռնարկել և Մխիթարի մօտ կու գան, զայն իրենց կողմը շահելու ակնկալութեամբ։ Բայց յուսախաբ կը մնան, որովհետեւ Մխիթար թէպէտ Հռոմի հետ յարաբերութենէ չէր խորշեր, բայց լատին ծէսերն ու բանաձեւերը ու սովորութիւնները չէր ուզեր ընդունիլ, և իր եկեղեցին իր ինքնութեան մէջ պահելով, Հռոմի հետ հաշտեցնելու գաղափարը կ'օրօրէր։ Մինչեւ իսկ Մխիթար բացարձակապէս կ'արգելուր անոնց գործածել այն ծէսերը, զորս Ունիթորներ կազմած էին Լատիններու հետեւողութեամբ։ Ներսէս ու Սիմոն յուսահատելով Մխիթարը համոզել, կը մեկնին Կիլիկիայէ և Աւինիոն կու գան Բենեդիկտոս ԺԲ պապին մօտ, իրենց գործունէութիւնը զօրացնելու նպատակով։ Հոն կը հասնին նոյն ատեն Լեւոնի պատուիրակները, Դանիէլ Մինոր, այսինքն Փրանկիսկեան կրօնաւոր, և Թորոս Միքայէլեանց պալատական (ՍԻՍ. 559), պաշտօն ունենալով պապը հաճեցնել, որ զինուորական օգնութիւն փութացնէ, քանի որ մօտալուտ էր Եգիպտացւոց յարձակումը։ Ունիթորներու համար նպաստաւոր էր պարագան, Հայերը կասկածաւոր ցուցնելով՝ պապին միտքը պղտորել, և օգնութիւնը պայմանաւորելով Հայերը բռնադատել, և լատինականութեան տիրապետութիւնը ապահովել։

**ՄՈԼՈՐՈՒԹԵԱՆՑ ՑՈՒՑԱԿ ՄԸ**

1288. Բենեդիկտոս կ'ուզէ լուսաբանուիլ, և կը յանձարարէ որ իրեն գրաւոր ներկայացուին այն կէտերը, որոնց մէջ Հայոց եկեղեցին մոլորած կ'ըսուի։ Շուտով գործի կը ձեռնարկեն այնտեղ գտնուող լատինամոլ Հայեր, և Կիլիկիայէ եկած հայատեաց Լատիններ, որոնք հարկաւ պատրաստ ունէին իրենց պաշարը, և ահագին ցուցակ մը կը ներկայեն Հայ եկեղեցւոյ կարծեցեալ մոլորութեանց մասին, զորս մինչեւ 117 հասուցած էին (ՄՆՍ. ԻԵ. 1185)։ Այս խումբին իբր գլուխ ճանչցուած է Ներսէս Պաղոն, որ իրեն աւելի կարեւորութիւն տալու համար, արքեպիսկոպոս Մանազկերտի անունն ալ առած էր (ՉԱՄ. Գ. 340)։ Պապին պատասխանը վճռական կ'ըլլայ Լեւոնի դեսպաններուն, թէ Հայեր ոչ մի օգնութիւն պէտք չէ յուսան, մինչեւ որ այդ ցուցակագրուած մոլորութիւններէն չհեռանան։ Այս կերպով պատգամաւորներ առանց յաջողութեան ետ կը դառնան (ՄՆՍ. ԻԵ. 1185)։ Անտեղի չէր ըլլար խորհրդածել, թէ Բենեդիկտոս կրօնամոլ նպատակին հետ, ճարտար խուսափողութեան ձեւ մըն ալ կը գործածէր, վասնզի Արեւելքի քրիստոնեաներուն օգնութեան երթալու եռանդը մարած էր, և արեւմտեան իշխաններէն ոչ ոք նոր խաչակրութեան կը յորդորուէր, և ամէնքը ներքին պայքարներով զբաղուած էին։ Լեւոն տակաւին յուսալից Արեւմուտքէն հասնելիք օգնութեանց վրայ, նոյն ինքն դեսպանութենէ դարձող Դանիէլի ձեռքով, առաջարկեալ գլուխներու մասին բացատրական գրութիւն մը պատրաստել կու տայ, որ

հարկաւ շատ ընդարձակ չէր կրնար ըլլալ։ Այդ գրութիւնը դեռ տեսնուած չէ, որչափ ալ անոր գոյութիւնը վերջին ատեններ լսուած է, բայց հրատարակուած չէ (ԴԱՐ. 42)։ Լեւոն գրութեան հետ Դանիէլն ալ անմիջապէս պապին կը դարձնէր, որպէսզի գրուածը ներկայէ, բերանացի ալ բացատրէ, և պապը համոզէ օգնութիւնը փութացնելու։ Մխիթարի անունը չյիշուիր, բայց անհնար էր որ թէ՛ Լեւոնի կարգադրած գործողութեան մէջ, և թէ՛ Դանիէլի պատրաստած գրութեան մէջ՝ խորհրդակցութիւն և մասնակցութիւն չունենար կաթողիկոսը՝ որ յատկապէս այդ օրերը՝ կացութիւնը դիւրացնելու համար ընտրուած էր։ Երթեւեկներուն արագ կատարումը կը ցուցնէ, թէ ինչ մեծայոյս ջանքով կ'աշխատէին Լեւոն ու Մխիթար, հռոմէական յարաբերութիւնները մշակել և անով իրենց քաղաքական կացութիւնը ապահովել։ Դանիէլ նորէն Աւինիոն դարձած է 1342 տարւոյն սկիզբները, բայց առաջին անգամէն աւելի յաջողութիւն ունեցած չէ։ Իւր բերած գրութիւնը անբաւական դատուած է, տրուած բացատրութիւնները անկատար նկատուած են, և պահանջուած է որ Հայերը յատուկ եկեղեցական ժողով գումարեն, 117 գլուխները մէկիկ մէկիկ նկատողութեան առնեն, և իւրաքանչիւրին մասին իրենց լիակատար հպատակութիւնը յայտնեն, և յամենայնի ու ըստ ամենայնի լատինականութեան հետեւելու յանձնառու ըլլան։ Այդ վերջին դարձուածը կրկին կը հաստատէ մեր խորհրդածութիւնը, թէ Բենեդիկտոսի ընթացքին մէջ մեծ մաս ունէր խուսափողական նպատակը։ Իսկ Ունիթոր խորհրդատուները կը ջանային պատեհէն օգտուիլ Հայ եկեղեցին վերջնականապէս լատինականին ձուլելու համար։

**ԼԵՒՈՆԻ ՄԱՀԸ**

1289. Երկրորդ մերժումը չափազանց վշտացուց Լեւոնը, և հարկաւ մերկապարանոց յայտնութեամբ պատկերացուց անոր աչքին առջեւ Լատիններուն խաբէական ուղղութիւնը, բայց ինչ օգուտ, որ արդէն բացարձակապէս պարտաւոր մնացած էր նա Եգիպտացիներուն առջեւ, Արեւմտեաններուն հետ պաշտօնական յարաբերութիւններ կատարելով, և վերահաս կը տեսնէր իւր թագաւորութեան սպառնացող վտանգը։ Նա իւր ընթացքով պարտաւոր կը մնար իւր ազգին ու ժողովուրդին առջեւ ալ, որ իբրեւ յետին ապաստան յանձնառու եղած էր եգիպտական հաշտութեան ծանր պայմանները (§ 1280), և զոր Լեւոն խախտած էր իւր թեթեւամիտ ակնկալութիւններով։ Դանիէլ պատգամաւորին երկրորդ անգամ ձեռնունայն և անյաջող դարձը՝ լրումն եղաւ տագնապալից վիճակին, որովհետեւ այնչափ յանձնառութիւններէ ետքն ալ տակաւին ինքզինքնին խաբուած ու վտանգուած կը գտնէին՝ թագաւորն ալ, կաթողիկոսն ալ, և իրենց համախոհներն ալ։ Այսու հանդերձ ուրիշ ելից ճանապարհ մը չունէին։ Լեւոն ու Մխիթար կը համաձայնին պահանջուած ժողովը գումարել և յարակից ձեւակերպութիւնները լրացնել, այդ կերպով պապը գոհացնելու և օգնութեան պարտաւորցնելու յոյսով։ Սակայն Լեւոն չհասնիր իւր մտածմունքին արդիւնքը տեսնալ, և կը մեռնի 1342 օգոստոս 26'ին (ՍԻՍ. 559)։ Պատմութիւնը անորոշ կը թողու Լեւոնի մահուան պարագաները։ Տարիքի խնդիր չի կրնար ըլլալ, վասն զի դեռ նոր թեւակոխած էր իւր 33'րդ տարին, ուստի ոմանք ներքին յուզման և սրտի ցաւի կը վերագրեն կանխահաս մահը, մինչ ուրիշներ ժողովրդական յուզումէ և լատինամոլ ուղղութեան դէմ կազմակերպուած շարժումէ յառաջ եկած սպանութիւն մը կը տեսնեն այդ պարագային մէջ (ՍԻՍ. 559), ինչ որ մեր տեսութեամբ ալ բոլորովին անհաւանական չերեւիր, քանի որ յառաջիկային ալ այդ տեսակ շարժումներու և սպանութիւններու օրինակները պիտի տեսնենք։ Լեւոնի մահը նոր տագնապ մը կը պատճառէր, վասն զի իրմով կը վերջանար Կոռիկոսեան կամ Պապեռոնեան ազգատոհմին արական ճիւղը, որ Ռուբինեան ազգատոհմին արական ճիւղին սպառելէն ետքը, իգական սերունդի իրաւունքով և Լեւոն Բ'ի Զապէլ աղջկան հետ խնամութեամբ (§ 1105), Կիլիկիոյ թագաւորութիւնը ժառանգած էր։ Լեւոն անորդի կը մեռնէր, և իւր հօրեղբայրներէն ալ արու զաւակ չէր մնացած, և ամէնէն մեր-

ձառերներ կը նկատուէին Լեւոն Դ'ի Զապէլ կամ Զապլուն աղջկան Ամաւրի Լուսինեանէ ունեցած զաւակները, որոնցմէ երկուքը սպաննուած էին, մէկը Ցունաստան կը մնար (§ 1270), իսկ վերջին երկուքը Սիսի արքունիքի մէջ գլխաւոր դիրքեր կը վայելէին (§ 1277)։ Այս անգամ նորէն Զապէլի մը միջնորդութեամբ Կիլիկիոյ թագակալ ազգատոհմը կը փոխուէր, սակայն յաջորդողը այլեւս Հայ չէր, այլ բնիկ և բուն ամենայնի Լատին, արեամբ և զգացմամբ և դաւանութեամբ, որ արդէն թագաւորութեան տկարանալուն պատճառն էր եղած, և որ զայն կործանման ալ հասուց։

**ԼՈՒՍԻՆԵԱՆՑ ԹԱԳԱՒՈՐԵԼԸ**

1290. Երիցութեան կարգով ժառանգութիւնը պէտք էր իյնար Գուիտոնի, որ Աքայիոյ կուսակալութիւնը կը վարէր, բայց երկար ժամանակի ու շատ գործողութեանց պէտք կար մինչեւ անոնց գալն ու գործի ձեռնարկելը, ուստի վերապահելով մէկտեղ Գուիտոնի իրաւունքը, Ջիւան Լուսինեան, որ պայլութեան պաշտօն կը վարէր, պետութեան գլուխը անցաւ և թագաւորութեան տիրացաւ, և ոչ թէ խնամակալութեան ձեւով կամ թագապահի տիտղոսով, ինչպէս ոմանք կը մտածեն (ՍԻՍ. 559), այլ իսկական տիրապետութեան կերպով, և Ջիւան անուան ալ Կոստանդինի փոխելով, հռչակուեցաւ և ընդունուեցաւ, իբր Թագաւորեալ տէր Կոստանդին, շնորհիւ և ընտրութեամբ Աստուծոյ Թագաւոր ամենայն Հայոց (ՄՆՍ. ԽԵ. 1186)։ Լատին պատմիչը կ'ըսէ, թէ Գուիտոնի հրաժարելովը Ջիւան տիրացաւ թագաւորութեան (ԴԱՐ. 32), սակայն ուրիշներ այդ պարագան չեն յիշեր, և կ'երեւի թէ Ջիւանի հապճեպ որոշման և Հայերուն համակերպութեան նպաստած է Եգիպտացւոց կողմէն 1342'ին կազմակերպուած արշաւանքը, ճիշդ Լեւոնի մահուան միջոցին։ Արդէն դիմադրելն ալ՝ պաշտօնին բերմամբ Ջիւանի կ'իյնար, քանի որ զինուորական ոյժն ալ իր ձեռքին տակ կը գտնուէր։ Սակայն արդիւնք մը չէ ունեցած իր հրամանատարութիւնը, և ոչ ալ կրցած է արգելուլ Հայերուն կոտորածը և Կիլիկիոյ աւերածը (ՍԻՍ. 559), որ տեղի ունեցան Եգիպտացւոց երեսէն։ Միւս կողմէն Եգիպտացւոց յայտնի թշնամութիւնը, աւելի եւս սաստկացուց Լատիններու օգնութեան անհրաժեշտութիւնը, հետեւաբար Լատինները հաճեցնելու հարկն ալ, կամ որ նոյն է Բենեդիկտոսի պահանջած ժողովական վճիռը և անպայման հպատակութիւնն ու համակերպութիւնը, որուն համար ամենայն հաւանականութեամբ հրաւէրներն ալ Լեւոնին մեռնելէն առաջ ղրկուած էին։ Ժողովին թուական նշանակուած է սովորաբար 1342 տարին (ՄՆՍ. ԽԵ. 1185), սակայն նկատելով թէ նոյն տարւոյ օգոստոսի վերջը տեղի ունեցած է Լեւոնի մահը, թէ ժողովը գումարուած է կամօք և հաւանութեամբ Կոստանդին Թագաւորին (ՄՆՍ. ԽԵ. 1186), որ է Ջիւան Լուսինեանը, և թէ Եգիպտացւոց արշաւանքն ալ պէտք էր գումարման յապաղելուն պատճառ ըլլար, յարմարագոյն է ժողովին թուականը դնել 1343'ին սկիզբները (ՍԻՍ. 559)։ Հետեւաբար պէտք կը զգանք այստեղ Մխիթարի գումարած Սիսի ժողովին պատմութիւնն ընել, և ժողովական գրութիւնը վերլուծել, և կարծեցեալ 117 մոլորութեանց քաղուածն ալ տալ։ Գիտենք թէ երկար և ձանձրալի պիտի ըլլայ այդ քաղուածը, և թէ պարունակութիւնն ալ այնչափ անկարեւոր և ստորին է, որ մինչեւ իսկ երկիւղած Ալիշանն ալ համարձակեցուցած է կոչել անոնք 117 յօդուածս անյարիրս, և վկայել թէ անոնցմէ շատք զզուանս խորշ ածեն ընթերցանելեաց (ՍԻՍ. 147)։ Ասով մէկտեղ կ'ուզենք հռչակաւոր 117 գլուխները բացատրել, որպէս զի միանգամ ընդ միշտ տեսնուի, թէ ինչ անտեղի կերպերով և անհիմն փաստերով կը վարուէին հռոմէադաւանները երբ Հայ եկեղեցւոյն դէմ կը գրէին, և անոր մասին տեղեկութիւններ կու տան։ Միւս կողմէն այդ հռչակաւոր ցուցակը, ոչ հայերէն բնագրով մը և ոչ լիակատար քաղուածով մը մերայնոց ծանօթացած չէ, և միայն լատիններէն գրուածը կայ մէջտեղ, որ անշուշտ թարգմանութիւն է Ունիթորներու ձեռքով կատարուած, և գուցէ այն ալ մասամբ աղաւաղուած։

1291. Մեր առջեւն եղած ժողովական գրութիւնը, գումարման տեղ և տարի և օր չնշանակեր, միայն 1342'ին Բենեդիկտոս ԺԲ

պալէն կարծեցեալ մոլորութեանց ցուցակին դրկուած ըլլալը կը յիշէ, իսկ Բենեդիկտոս 1342 տարւոյն մէջ մեռած էր, և մայիս 19'ին իրեն յաջորդած էր Կղեմէս Զ, որին անունն ալ սոյն գրութեան մէջ կը յիշուի (ՄՆՍ. ԻԵ. 1188)։ Գիտենք ալ որ ժողովը Լեւոնի մահուընէ ետքը բացուեցաւ, որ օգոստոս 26'ին տեղի ունեցած էր (ՍԻՍ. 559), և Եգիպտական արշաւանքն ալ նկատի առնելով 1343'ին սկիզբը դնելը յարմարագոյն հաշուեցինք (§ 1290)։ Իսկ տեղը անշուշտ Սիս եղած է, և այնպէս ալ սովորաբար ընդունուած է (ՉԱՄ. Գ. 341)։ Ներկաները կաթողիկոսով մէկտեղ 30 եպիսկոպոսներ են, 15 վարդապետներ, և 7 աւագերէցներ, և ուրիշ քահանաներ։ Ասոնց ցուցակը լատիներէնին մէջ կը գտնենք աղաւաղուած անուններով, զորս Չամչեան նմանողութեամբ ջանացած է հայացնել։ Եպիսկոպոսներէն 20 հատը Կիլիկեցիներ են, Բարսեղ Սիսի, Վարդան Տարսոնի, Ստեփանոս Անարզաբայ, Բարսեղ Բարձրբերդի, Գրիգոր Ատանայի, Յովհաննէս Այասի, Ներսէս Կապանի, Յովհաննէս Մաշարդի, Գրիգոր Գերմանիկիոյ, Պօղոս Կոկիսոնի, Դաւիթ Համամի, և Գրիգոր Մաշկեւորի, իսկ ութն ալ առանց թեմի՝ կաթողիկոսարանի եպիսկոպոսներ, Յովհաննէս, Կոստանդին, միւս Յովհաննէս, Ստեփանոս, Սարգիս, Բարսեղ, Գրիգոր և Բարսեղ ատենադպիր։ Ասոնցմէ ոմանց վիճակները անիմանալի կը մնան եթէ լատին բառերուն հետեւինք, զի Կապան մեկնուածը գրուած է Կամպանիա, Մաշարդը՝ Մաթիքար, Կոկիսոնը Կոգուանիա, Համամը՝ Կամանտիա, և Մաշկեւորը՝ Մասգուկիմիա։ Վեց եպիսկոպոսներ ալ Փոքր Ասիոյ մերձաւոր վիճակներէն են. Մարկոս Կեսարիոյ, Բարսեղ Իկոնիոյ, Սիմոն Սեբաստիոյ, Բարսեղ Անկիւրիոյ, Ստեփանոս Տրապիզոնի, և Գրիգոր Տիանայի, որուն վիճակը լատիներէնին մէջ Տարտուինիա է գրուած։ Երեք եպիսկոպոսներ միայն Հայաստանէ կը կարծուին, Դաւիթ Տարոնի, Դանիէլ Ջմշկածագի և Մեսրոպ Խորձեանի, թէպէտ շատ կեղակարծ են, զի Ջմշկածագի փոխուածը լատիներէնի մէջ Թեմիսկիա կը կարդացուի, և Խորձեանը՝ Սորկանանտիա, և Չամչեանի տուած մեկնութիւնը կամայական կը դառնայ, և միայն իբրեւ ճիշդ անուն կը մնայ Տարոնը իբր Հայաստանի վիճակ, և ինքնիրեն նշանակութիւն ալ չունենար։ Ներկայ վարդապետներն են Դանիէլ Սսեցի, նոյնինքն պատգամաւոր գացող Փռանկիսկեան կրօնաւորը, Բարսեղ Մաշկեւորցի, Ներսէս Պոսինանդացի, և Յովհաննէս և Ստեփանոս կաթողիկոսարանի պաշտօնեաներ։ Մնացած տասները իբրեւ հայր վանաց կը նշանակուին, և են Յովհաննէս Ակների, Կարապետ Մեծքարի, Թորոս Մովսիսավանքի, Ստեփանոս Միակեցերի, Յովհաննէս Բլուրի, Կոստանդին Լիսանկանի, Հայրապետ Ուռամնոսի, Յովհաննէս Բեղեղականի, Լեւոն Գերմաղբերի, և Դաւիթ Փրկչի։ Այս տեղ ալ քանի մը անուններ բոլորովին տարբեր կը հնչեն լատիներէնին մէջ, Մեծքարը կը կարդացուի Կիրոլիմ, Միակեցերը՝ Կեսետան, Բեղեղականը՝ Կալլգոյն, Գերմաղբեւրը՝ Կէմէրկէկոն, և Փրկիչը՝ Պերդեր։ Վերջապէս աւագերէցներէն կը յիշուին, Լեւոն արքունի պալատին, Յովհաննէս Սիսի, Բարսեղ Ատանայի, Աստուածատուր Տարսոնի, Կոստանդին փակակալ մեծ եկեղեցւոյ, Կոստանդին Սուրբ Սոփիայի, և Յովհաննէս Հեթումաշէնի, կամ աւելի ճիշդ Եթենակինի։ Այդ անունները տալէն ետքը գլխաւոր դիտելիքնիս այն է, թէ պարզապէս Կիլիկեցւոց գումարում մը եղած է Սիսի ժողով բառածը, և ոչ երբեք ընդհանուր Հայոց եկեղեցւոյ ժողով մը, ինչ որ կը տկարացնէ անոր կանոնական նշանակութիւնն ու հեղինակութիւնը։ Դիտելու է եւս, որ թագաւորի և իշխաններու անուններ չեն յիշուիր, ինչ որ ազգային ժողովի սկզբունքին համաձայն չէ, և ասով աւելի կը շեշտուի լատինական սկզբունքի հետեւողութիւնը, որ աշխարհականները հեռու կը պահէ եկեղեցական գործերէ։ Ըստ այսմ Մխիթարի ժողովը լոկ մասնաւոր խորհրդակցութեան համար գումարում մը եղած կ'ըլլայ՝ պապին պահանջած պատասխանները պատրաստելու, և ոչ երբեք ազգային կանոնական ժողով մը։ Կամ աւելի ճիշդ, Լատինները հաճեցնելու համար կազմակերպուած դիւանական միջոց մը, և ոչ թէ Հայ եկեղեց-

ՍՍՈՑ ԳՈՒՄԱՐՈՒՄԸ

ւոյ դաւանութեան և ծէսին ազատ բացատրութիւնը։

1292. Պարզապէս պատասխաններ պատրաստելու համար գումարուած խորհրդակցութիւն մը ըլլալը յայտնապէս ալ նշանակուած կը գտնանք Ժողովական Բացատրութիւն կոչուած գրութեան սկիզբը։ Ժողովականները կը յայտարարեն թէ մէկտեղ հաւաքուելով կարդացին և լսեցին սխալներու և ստութիւններու գրութիւնը, և զայն իր բոլոր մանրամասնութեանց մէջ քննեցին, թէ անոր մէջէն զատեցին ուղղափառ հաւատոյ և եկեղեցւոյ խորհրդոց ճշմարտութիւնները՝ սուտ մոլորութիւններէն, և թէ Հռոմի տէր Կղեմէս պապին, տէր Բենեդիկտոսի յաջորդին կը ներկայացնեն հաւատքի և խորհրդոց վարդապետութիւնները, ծէսերն ու սովորութիւնները, ինչպէս որ միշտ ունեցած է Հայոց եկեղեցին և ինչպէս այժմ ալ ունի։ Իսկ Հայերէն ոմանց մոլորութիւնները, որոնք պատահաբար խօսուած են, իրենք ընդունած չեն, և կը մերժեն ու կը դատապարտեն օտարազգի հերետիկոսներու մոլորութիւնները։ Այդ բացատրութիւնները զորս Սսոյ ժողովին գրութենէն կը քաղենք (ՄՆՍ. ԽԵ. 1188), բացայայտ կը ցուցնեն, թէ Մխիթար կաթողիկոսի և իրեն հետ եղողներուն բռնած ձևը եղած է, չհեռանալ Հայոց եկեղեցւոյ դաւանութենէն ու արարողութիւններէն, այլ աշխատիլ անոնք Հռոմի պահանջած ձևերուն մօտեցնել։ Իսկ այլանդակ կամ տարօրինակ գլուխները, որոնք իբրև Հայոց եկեղեցւոյ մոլորութիւններ ցուցուած էին, մասնաւորներու խօսք կամ գործ ըսելով՝ վրաններնէն հեռացնել։ Այս ուղղութիւնը բոլորովին տարբեր է Ունիթորներու հետևած կերպէն, որոնք կ'աշխատէին Հայ եկեղեցին կատարելապէս լատին կաղապարին վրայ ձուլել, հազիւ թէ լեզուն հայերէն պահելով, և մինչև իսկ հայ լեզուն ալ լատինական ոճին ենթարկելով։ Հաշուած 117 գլուխները այդ գրութեան մէջ մի առ մի յառաջ բերուած են, հարց պատասխանի ձևով, առաջարկուած կէտերը բառացի դնելով, անոնց պատասխանները դիմացը նշանակելով։ Մենք կրկնութենէ խորշելու համար առաջարկները և բացատրութիւնները միատեղ պիտի քաղենք, ջանալով, որչափ հնար է, համառօտ կերպով էական իմաստները տալ, և ոչ թէ ընդարձակօրէն բացատրել, զի այն ատեն կատարեալ թարգմանութիւն մը տալու պիտի պարտաւորուէինք ամբողջ գրութեան, որ 86 անագին էջեր կը գրաւէ լատիններէն բնագիրին մէջ (ՄՆՍ. ԽԵ. 1185—1270)։ Թէպէտև այս ամփոփ քաղուածն ալ բաւական տեղ պիտի գրաւէ մեր պատմութեան մէջ, սակայն անհրաժեշտ սեպեցինք որ մերայինք անգամ մը այդ 117 գլուխներուն ցուցակը ամբողջաբար աչքի առջև ունենան։

ԳՐՈՒԹԵԱՆ ՈՃԸ

1293. Առաջին կէտը կը սկսի Հոգւոյն Սրբոյ բղխման խնդիրով։ Ունիթորներու կազմած և պապին իրացուցած ցուցակը կ'ըսէ թէ 1. Հայերը առաջ ի Քրիստոս բղխումը կ'ընդունէին եղեր, բայց իբր 612 տարի առաջ ժողովով մը մերժեր են, և հիմայ ալ կը մերժեն, և եթէ այս տեսակ բացատրութիւն մըն ալ կը գործածեն, ոչ թէ յաւիտենական բղխումին վրայ, այլ արարածոց սրբութեան համար եղած ժամանակաւոր բղխումին վրայ կ'իմանան։ Պատասխանին մէջ, ի Քրիստոս բացատրութիւնը գործածուած ըլլալու վկայութիւն կը բերեն Հոգեգալստեան օրուան երրորդ աղօթքին սկիզբը (ՄՆՍ. ԽԵ. 1188), սակայն այժմեան օրինակներ այս բացատրութիւնը չունին (ՃԱՇ. Բ. 55)։ Կ'ըսեն նաև թէ յիշուած ժողովը՝ Մանազկերտի ժողովը կրնայ ըլլալ, բայց անոր մէջ Հոգւոյն Սրբոյ խնդիր եղած չէ, իսկ բղխման վրայ խօսած ատեն տարբերութիւններ դրուած ըլլալը՝ անհիմն և ճշմարտութեան հակառակ կը հռչակեն։ 2. Թէ Հայեր հանգանակի մէջ ի Քրիստոս բղխում չեն յիշեր, Յովհաննու աւետարանի բացատրութիւնը կը պնդեն, և եթէ մէկը ընդունի ալ, յայտնել չհամարձակիր, մինչ Քաղկեդոնի ժողովը Կոստանդնուպոլսոյ և Եփեսոսի վճիռները ընդունելով, ի Քրիստոս բղխումը հաստատած է։ Կը պատասխանեն, թէ իրենք աւետարանի վրայ կը հիմնուին, բայց յորմէհետէ Հռոմի հետ յարաբերութիւն հաստատեցին, ի Քրիս-

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 1—5

ոյ վարդապետութիւնը կ'ընդունին, իսկ Քաղկեդոնը չեն ընդունած, որովհետեւ Լեւոնի տումարը Նեստորական միտք ունի, յայտնապէս ալ դրած ըլլալով, թէ Բանն մարմին եղեւ և փոփոխեցաւ ի [illegible] (ՄՆՍ. ԻՍ. 1190)։ Այս կտորին մէջ դիտել պիտի տանք թէ հանգամանկէն յառաջ բերուած հատուածը՝ ունի [illegible] (ՄՆՍ. ԻԵ. 1180), և ոչ [illegible]։ 3. Թէ Հայեր նոյն ժողովին մէջ, այսինքն 612 տարի առաջ գումարուած ժողովին մէջ, դատապարտեցին Քաղկեդոնի ժողովը, և Լեւոնի տումարը, և դաւանեցին մի բնութիւն, մի կամք և մի ներգործութիւն, և հակառակը դաւանողները բանադրեցին և սպաննեցին։ Գիոսկորոսն ալ իբր սուրբ հռչակեցին, և տարին երեք անգամ կը կրկնեն անոր փառաբանութիւնը։ Կը պատասխանեն, դարձեալ կրկնելով Քաղկեդոնի և Լեւոնի դատապարտութեանց համար տուած բացատրութիւննին։ Դատապարտութիւնը կը վերագրեն Մանազկերտի ժողովին, բայց զայն դադարած կ'ըսեն Սսոյ և Ատանայի ժողովներով։ Կը յաւելուն թէ Դիոսկորոսի պատուոյն երգը գործածութենէ դադրած է, և փոխարէն չարականի նոր տուն մը յօրինուած է, իբր երկու բնութեանց յայտարարութիւն։ Այդ տունը պէտք է Անաւարզեցիին անգործածական չարականներէն եղած ըլլայ։ Հնար չէ չդիտել, թէ ինչպէս ենթադրական ձեւերով կ'աշխատին Հռոմը գոհացուցած երեւնալ։ 4. Թէ Հայերը կը կարծեն թէ նախահայրերուն մեղքը անձնական էր, և թէ լոկ մեղքին ծանրութեան պատճառաւ՝ իրենց սերունդը դատապարտուեցաւ, թէ տղայ մեռնողները՝ Քրիստոսի գալուստէն առաջ դատապարտութեան ենթարկուեցան, թէպէտ իրենք մեղաւոր չէին, բայց թէ այն ալ վերջացած է Քրիստոսի գալուստէն և նախահայրերուն մեղքը ջնջելէն ետքը։ Կը պատասխանեն, թէ այսպիսի կարծիք ունեցան Պեղագեաններ և Կելեստինեաններ, որոնք Հայ չէին, և որոնց կարծիքը Հայաստան չհասաւ։ Եւ երկար հատուածներ յառաջ բերելով մկրտութեան մաշտոցէն, կը ցուցնեն թէ Հայեր կը մկրտեն ի [illegible], որ հարկաւ տղայոց վրայ իրենց անձնական մեղքը չկրնար ենթադրուիլ։ 5. Թէ Մխիթար վարդապետ մը սովեցուցած է՝ զաւակներուն հօրերնուն հոգիէն ելլելը, ինչպէս ճրագը ճրագէ, և թէ Արճէշի գաւառի եօթը վիճակներ իբրեւ սուրբ կը պատուեն Մխիթարը։ Կը պատասխանեն, թէ այսանկ բան մը լսած չեն և գրպարտիչներու յօրինած սուտերուն կարգէն է, և թէ ընդհակառակն Մխիթար իւր կենդանութեան այդ կարծիքը հերքած է։ Խնդիրը Մխիթար Սասունցի վարդապետին վրայ է, ինչպէս արդէն յիշեցինք (§ 1286)։

**ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 6—12**

1294. Կը շարունակէ կարծեցեալ մոլորութեանց ցուցակը։ 6. Թէ Հայերը կ'ըսեն որ քրիստոնեայ ծնողաց տղաներուն հոգիները Ադամի դրախտը կ'երթան, իսկ ոչ-քրիստոնեայ ծնողներու տղայոց հոգիները իրենց ծնողքերուն հոգիներուն մօտ կ'երթան։ Կը պատասխանեն, թէ Հայեր քրիստոնեայ և ոչ-քրիստոնեայ տղայոց հոգիներուն մէջ զանազանութիւն չեն դներ, այլ թէ ամէնքն ալ միատեղ կ'երթան տեղ մը՝ որ որոշ չէ, և ուր առանց պատժոյ երանութենէ զրկուած կը մնան, և թէ այդ տեղին Լիմպոս անունն ալ Լատիններէն սովեցան։ 7. Թէ Հայերը կ'ըսեն թէ բոլոր մեռածներու հոգիները օդին կամ երկրի մէջ տեղ մը կը մնան մինչեւ դատաստանի օրը, և անմիջապէս դժոխք կամ արքայութիւն չեն երթար, և թէ անկնունք տղայոց հոգիներն ալ յարութենէ ետքը արքայութիւն կ'երթան առանց երանութեան։ Կը պատասխանեն, թէ թէպէտ վարդապետներէն ոմանք Յոյն եկեղեցւոյ վարդապետութեան համաձայնեցան, սակայն Հայոց եկեղեցին կ'ընդունի թէ մեռածներ այժմէն հոգւով, և յարութենէ ետքը հոգւով ու մարմնով արքայութիւն կամ դժոխք կ'երթան։ Իրենց բածին հաստատութեան համար շատ մը շարականի կտորներ յառաջ կը բերեն, որոնք սակայն անմիջական երանութեան ճշգիւ չեն պատասխաներ։ 8. Թէ Հայերը չեն ընդունիր, որ վերջին դատաստանէն հարքն ալ արքայութիւն զացողներ Աստուծոյ էութիւնը պիտի տեսնեն։ Կը պատասխանեն, թէ այսանկ վարդապետութիւն չունի Հայոց եկե-

ղեցին, աստուածային տեսութիւնը կ'ընդունի, թէպէտ ատրճաններ կը դնէ երանելեաց արժանիքին համեմատ։ Աւելի յստակ խօսած կ'ըլլային եթէ աստուածային տեսութիւնը՝ անիմանալի էութեան կատարեալ իմացութենէն զանազանէին։ 9. Թէ Հայերը անկնունք տղայոց և ոչ կատարեալ սրբացելոց հոգիներուն համար կ'ըսեն, որ ամէնքը դրախտ կ'երթան, իսկ կատարեալ արդարացեալներ միայն հրեղէն լոյսի պսակներ ունին և խաչին լոյսով կը զուարճանան։ Կը պատասխանեն, թէ այսպիսի անհեթեթ բաներ Հայերուն մէջ և ոչ իսկ խօսուած են։ 10. Թէ Հայեր կ'ընդունին որ վերջին դատաստանէն ետքը, ոչ կատարելապէս չարեր այս երկրի վրայ կը մնան ամուսնացեալ վիճակով, իբրեւ նուազ երանութեան դրախտի մը մէջ։ Կը պատասխանեն, թէ Հայ եկեղեցին դատաստանէն ետքը միայն արքայութիւն և դժոխք կ'ընդունի, և ոչ մի միջակ կամ տարբեր կայարան, և ոչ ամուսնական վիճակ։ 11. Թէ Հայերուն կարծիքները չարերուն համար տարբեր են։ Ոմանք դատաստանէն ետքը կ'ընդունէին հրեղէն ովկիանոս մը ուր վիշապներ պիտի չարչարեն դատապարտեալները, ինչպէս նաեւ սատանաները։ Իսկ ոմանք բնաւ դժոխք չեն ընդունէր. թէ դատապարտեալներ իրենց մեղքերուն խիղճովը կը չարչարուին։ Կը պատասխանեն, թէ հրեղէն ովկիանոսը և վիշապները առասպելներ են, իսկ դժոխքին Քրիստոսի մահուամբը բոլորովին ջնջուած ըլլալը, քանի մը անիմաստներ կրնան ըսած ըլլալ, ինչպիսիներ Լատիններուն մէջ ալ կը գտնուին, այլ եկեղեցին կ'ընդունի դատապարտելոց դժոխքը՝ Լատինացւոց վարդապետութեան նման։ 12. Թէ Հայեր կ'ըսեն, որ ամէնուն բարի և չար գործերը կշիռի երկու կողմերը պիտի դրուին, եթէ չարերը ծանր կշռեն, հրեղէն ովկիանոս պիտի նետուին, եթէ բարի գործերը ծանր կշռեն, այլ երկրին երանաւէտ դրախտը պիտի տարուին, իսկ եթէ հաւասար գան, երկրի վրայ պիտի մնան առանց երանութեան։ Կը պատասխանեն, թէ այդ խօսքերը առասպելներ են, և անամօթ ստութիւններ։

1295. Կը շարունակէ, 13. Թէ Հայերը, որչափ ալ տղաքները մկրտելու պէտքը կը ճանչնան, բայց կ'ըսեն թէ կը մկրտուին ոչ թէ մեղաց թողութեան համար, այլ քրիստոնեայ ըլլալու և փառաց արժանանալու համար։ Կը պատասխանեն, թէ Հայերը մկրտութիւնը կը կատարեն ի Թողութիւն Մեղաց, ինչպէս 4'րդ յօդուածով բացատրուեցաւ, և նոր վկայութիւններ ալ աւելցնելով, առարկութիւնը սուտ ու զրպարտիչ կը կոչեն։ 14. Թէ Հայերը կը դաւանին որ Քրիստոս մահուընէ ետքը դժոխք իջաւ, և դատապարտեալներէն որոնք որ իրեն հաւատացին, արդարացուց, և չհաւատացողները տարբեր ատրճաններու վերածեց. ինչպէս վերը ըսուեցաւ, դժոխքը ջնջեց, և ամէնուն վիճակը առկախ թողուց մինչեւ դատաստանին օրը։ Կը պատասխանեն, իւրաքանչիւր կէտի մասին՝ արդէն բացատրուած յօդուածներուն համեմատ, աւելցնելով ալ թէ արդէն դատապարտեալներու համար արդարացում չեն ընդունիր։ Իսկ մինչեւ աշխարհի վերջը հոգիներուն դատաստանի սպասելը Յոյն եկեղեցւոյ հետ միաձայնութեամբ ընդունուած ըլլալը յայտնելով, այժմ Հռոմի եկեղեցւոյն համաձայնած ըլլալնին կ'աւելցնեն։ 15. Թէ Հայերը չեն ընդունիր որ սատանաներ զգալի պատիժներ կը կրեն, այլ թէ մինչեւ աշխարհի վերջը օդին մէջ կը մնան, սեւացած և երանութենէ զրկուած։ Կը պատասխանեն, թէ այժմ Հռոմի կարծիքին դարձած են։ 16. Թէ Հայերը հրեշտակներուն ստեղծուելուն ժամանակին մասին տարակարծիք են, թէ՛ աշխարհի ստեղծումէ առաջ կամ թէ աշխարհի ստեղծման սկիզբը։ Թէ կը կարծեն որ բոլոր հրեշտակներ բարի ստեղծուեցան, թէ չորրորդ կամ վեցերորդ օրը մեղանչեցին, և երկինքին մէկ ծակէն վար ինկան, ուսկից բարի հրեշտակ մըն ալ ինկաւ, բայց Ս. Բարսեղի միջնորդութեամբ երկինք դարձաւ։ Թէ Ադամի մեղանչելու ատեն ոմանք նոյն օրը ժամը 6'ին կ'ըսեն, և ոմանք շաբաթ մը ետքը։ Կը պատասխանեն, թէ առասպելական յօրինուածներ են, քանի որ հրեշտակներ անմիւթական են, և Ադամին մասին Շնորհալին կը յիշեն, որ ժամը մէկին Ադամը, և երեքին Եւան ըս-

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 13—19

տեղծուած կը դնէ, վերջին ալ նախահայրերուն մեղքը։ 17. Թէ Հայերը Մաքրարան կամ Քաւարան չեն ընդունիր, և խոստովանութեամբ ամէն մեղքերը կատարելապէս ներուած կը կարծեն։ Թէ սուրբերուն համար ալ կ'աղօթեն, և անհաւատներուն հոգիները իրենց գերեզմաններուն վրայ մինչև դատաստանին օրը կը մնան, կ'ըսեն։ Կը պատասխանեն, թէ այդ անունը չեն գործածեր, բայց ննջեցելոց համար կ'աղօթեն, որպէս զի իրենց մեղքերուն ներում շնորհուի, և թէ գիտեն որ մեղքերուն քաւութեան համար ապաշխարութիւններ կամ պատիժներ ալ պէտք են։ Կը յաւելուն, թէ սրբոց նկատմամբ պատարագամատոյցին աղօթքը սխալ մեկնուած է, և թէ անհաւատներուն համար ըսուածը առասպելաբանութիւն է։ 18. Թէ Հայեր կը կարծեն, որ Քրիստոս մարդացաւ, ոչ թէ սկզբնական մեղքը ջնջելու համար, այլ իրմէ առաջ դժոխք մնացողները ազատելու, դժոխքը ջնջելու, մանուկները արքայութիւն տանելու, և մարդիկները զղջումի բերելու համար։ Կը պատասխանեն, թէ սկզբնական մեղքին մասին 4'րդ յօդուածին մասին խօսեցան, մնացածներն ալ սխալ մեկնութիւններ են։ 19. Թէ Հայերը նախահայրերէն մինչև Քրիստոս՝ ամէնքը հոգւով և մարմնով մեռած կ'ընդունին, և մարմնոյ ցանկութիւնը անոնց մեղքին հետևանք կ'ըսեն, օրինաւոր ամուսնութեան ցանկութիւնն ալ մեղք կը նկատեն, և եթէ մեղանչած չըլլային, կ'ըսեն, մարդիկ առանց զուգաւորութեան և առանց սերման պիտի շատնային, ինչպէս ճրագը ճրագէ։ Կը պատասխանեն, մերժելով բոլոր ըսուածները իբր անհիմն զրպարտութիւն, կը յայտնեն թէ Զաքարիա կաթողիկոսի խօսքերը սխալ մեկնուած են։

**ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 20—33**

**1296.** Կը շարունակէ, 20. Թէ Հայերը Քրիստոսի մարդեղութեան մէջ, մարդկային բնութիւնը աստուածային բնութեան փոխարկուած կ'ըսեն, երկու բնութիւն ընդունողները՝ իբր անկնունք հեթանոսներ նորէն կը մկրտեն։ Կը պատասխանեն, փոխարկութիւնը միաւորութենէն զանազանելով, Շնորհալիէն երկար հատուած մը բերելով, և կրկին մկրտութիւն չըներնին վկայելով, նոյն իսկ Նեստորականաց վրայ։ 21. Թէ Հայերը մարդկային բնութիւնը աստուածային բնութեան փոխարկուած ընդունելով, նոյնը չարչարելի և անչարչարելի, մահկանացու և անմահ կ'ընդունին, և թէ մէկ կամք և մէկ ներգործութիւն կը դաւանին։ Կը պատասխանեն, միաւորութիւնը պաշտպանելով, և կատարեալ մարդ դաւանելով Քրիստոսը, և շատ երկար բացատրութիւններ կուտան այդ մասին, առանց ընդունելու Եւ յՈրդւոյն բանաձեւը։ 22. Թէ Հայերը կ'ըսեն որ Քրիստոս մահուընէն ետքը դժոխք իջաւ, դժոխքը ջնջեց և հոգիները դրախտ տարաւ, և անկէ ալ հանելով երկրին մէջ բերաւ, և այն տեղ կամ օդին մէջ թողուց դրախտի մօտերը։ Կը պատասխանեն, թէ սուտ և անիմաստ և անհիմն առասպելներ են։ 23. Թէ Հայերէն ոմանք կը կարծեն որ աւազակին զրուցուած [illegible]'ը, դատաստանի օրուան համար պիտի իմացուի, իսկ ուրիշներ կը կարծեն թէ նոյն ուրբաթ օրը դրախտին դուռը գնաց, և երբոր Քրիստոս ալ եկաւ, Ենովք ու Եղիա դուռները բացին, ու ներս մտան, բայց թէ նորէն Քրիստոս զայն դրախտէն հանեց ու երկրի մէջ բերաւ։ Կը պատասխանեն, թէ իրենք կը ճանչնան որ աւազակին հոգին ալ Քրիստոսի հետ դժոխք իջաւ, որ Գոգն Աբրահամու ըսուածն է, և ուրիշ հոգիներու հետ անկէ երկինք փոխադրուեցաւ։ 24. Թէ Հայերը կը կարծեն որ Քրիստոս մահուընէն ետքը դժոխքը ջնջեց, և այս պատճառով մարդիկներուն մեռնելէն ետքը, հրեշտակներ բարիները կը տանին մինչև դրախտը, և սատանաներ չարերը կը տանին հրեղէն ովկիանոսը, և կը ցուցնեն, բայց չեն մացներ, և երկիր կը դարձնեն, որ դատաստանի օրուան սպասեն։ Կը պատասխանեն, թէ արդէն յայտնած են որ ամէնքն ալ չինծու առասպելներ են։ 25. Թէ Հայերը Քրիստոսի վրայ մարդկային հոգի չեն ընդունիր, և երբ հակառակ փաստերու չեն կրնար պատասխանել, ծեծի և պատիժներու կը դիմեն, և թէ կ'ըսեն, որ Քրիստոս իր աստուածութիւնը մարդկութեան կերպարանով ծածկեց։ Կը պատասխանեն, նորէն միաւորութիւնը բացատրե-

*լով, և առարկութեան երկու մասերուն մէջ հակասութիւնը ցուցնելով։ 26. Թէ Հայերը Քրիստոսի վրայ, ոչ մարդկային հոգի և ոչ մարմին կ'ընդունին։ Կը պատասխանեն, և կը հաստատեն թէ բոլորովին անհիմն ենթադրութիւն է։ 27. Թէ Հայերը կը կարծեն որ յարութիւնը շաբաթ երեկոյ ժամը վեցին տեղի ունեցաւ, և ըստ այնմ տօն կը կատարեն և հաւկիթ ու պանիր կ'ուտեն։ Կը պատասխանեն, տօնը նախատօնակէն զանազանելով, և նախատօնակի նշանակութիւնը, և Քրիստոսի կիրակի օրը յարութիւն առած ըլլալը երկարօրէն կը բացատրեն։ 28. Թէ Հայերը չեն կրնար պատասխանել անոնց որ Քրիստոսի յարութենէն ետքը մարմին ունենալը կը ցուցնեն։ Կը պատասխանեն, թէ երբեք հակառակը ըսած չեն, և արդէն ըսածներնուն վրայ նոր բացատրութիւններ կ'աւելցնեն։ 29. Թէ Հայերը կ'ըսեն, որ Քրիստոսի աստուածային բնութիւնը իւր կամքին կը հնազանդէր, որ զայն ուզածին պէս փոփոխէր և մարդկային կրից ենթարկէր։ Կը պատասխանեն, և կը մերժեն իբրև յիմարութեան խօսքեր։ 30. Թէ Հայերը կը կարծեն որ յարութենէ ետքը Քրիստոս մարդկային բնութիւն չունէր, թէ ոչ երկինք չէր համբառնար, այլ Ենովքի և Եղիայի պէս դրախտ կ'երթար։ Կը պատասխանեն, մարդկային բնութեան ոչ թէ ջնջուած այլ միաւորուած ըլլալը լուսաբանելով։ 31. Թէ Հայերը առաքելոց և մարգարէից խօսքերը, ուր Քրիստոսի համար գրուած է թէ հոգիները գերութենէ ազատեց, այնպէս կ'իմանան՝ որ ոչ թէ դժոխքէն երկինք, այլ երկիր բերած ըլլայ։ Կը պատասխանեն, միշտ իրենց կանխաւ ըսածները կրկնելով։ 32. Թէ Հայերը կ'ըսեն որ Քրիստոս սատանաները կապեց, որ մարդիկներուն չվնասեն, սակայն 300 տարիէ ի վեր կապանքներէ ազատեցան, և մարդիկները խաբեցին՝ Հայերէն զատ. բայց 30 տարուընէ ի վեր Մեծ Հայոց Հայերէն ալ մաս մը խաբեցին որ բաժակին ջուր խառնեն և դեկտեմբեր 25'ին ծնունդ տօնեն։ Կը պատասխանեն, պատմելով Քրիստոսի 1000 թուականին եղած շարժերը և խաւարումները, զորս Յովհաննէս Կոլեան վարդապետը սատանային կապանքներէն արձակուելուն վրայ մեկնած է (§ 833), և վերջէն կ'ընդունին թէ իրենք ճշմարիտ հայադաւաններէն մեղադրուած են լատինական ծէսերու համակերպած ըլլալնուն համար։ 33. Թէ Հայերը կ'ըսեն որ Քրիստոս երկինքին մէջ մարդկութիւն ունի, այլ մարդկային բնութիւն և կամք չունի, և թէ կը կարծեն որ Քրիստոս համբառնալէն ետքը ամէն օր հրեշտակներուն մէկ դասակարգին հետ մնաց, և միայն տասներորդ օրը նստաւ ընդ աջմէ Հօր, և Հոգին Սուրբը ղրկեց։ Կը պատասխանեն, աննշանակ ցուցնելով մարդկութեան մասին տարբերութիւնները, իսկ հրեշտակաց դասակարգներուն մասին կը պատմեն Լուսաւորիչին վիրապի մէջ ունեցած տեսիլքը, որ պարզ տօնախմբութիւնները կը յիշէր, և ոչ թէ օրէ օր տեղափոխութիւններ։*

**ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 34—44**

**1297**. *Կը շարունակէ. 34. Թէ Մեծ Հայոց Հայերը ինքզինքնին բուն կաթողիկէ և առաքելական եկեղեցի կ'ընդունին, վասնզի նոյնութեամբ կը պահեն առաքեալներու քարոզած վարդապետութիւնը. իսկ Յունաց ու Լատինաց եկեղեցիները ոչ եւս, վասն զի երկու բնութիւն կ'ըսեն. բաժակին ջուր կը խառնեն և դեկտեմբեր 25'ին ծնունդ կը տօնեն։ Իսկ Փոքր Հայոց Հայերէն՝ թագաւորէն և քանի մը իշխաններէն դուրս ամենքը իրենց համամիտ կը կարծեն. ինչպէս նաեւ, թէ Հայոց եկեղեցին միայն պիտի մնայ աշխարհի վերջը։ Կը պատասխանեն, աւելի փախուստ տալով, քան մերժելով, ոչ Մեծ Հայոց՝ այլ Ամենայն Հայոց եկեղեցին, առաքելական և կաթողիկէ կը հռչակեն, բաժակի ջուրը և դեկտեմբերի 25'ի Ծնունդը՝ Յոյներու մէջ վերջէն մուծուած կը յայտնեն, ուրիշներուն վրայ նախատական ակնարկները կը մերժեն, և Կիլիկիան ընդհանրապէս Հռոմի հետ համաձայնած կը յայտարարեն։ 35. Թէ Հայերը կաթողիկէ եկեղեցին միութեան մէջ կ'ընդունին մինչև Քաղկեդոնի ժողովը, բայց անկէ սկսելով Յոյները ու Լատինները ուղղափառութենէ հեռացած կ'ըսեն։ Կը պատասխանեն, Հայոց Քաղկեդոնի ժողովը մերժելնուն պատճառը, որովհետեւ Եփեսոսի*

ժողովին բանաձեւին հակառակ երկուքութիւն ընդունած էր Նեստորի հետեւողութեամբ։ Կը պատմեն Եզրի ժամանակ Կարնոյ ժողովով Քաղկեդոնի ընդունուիլը, և Օձնեցւոյն ժամանակ Մանազկերտի ժողովով նորէն մերժուիլը, և վերջապէս Սսոյ և Ատանայի ժողովներով նորէն ընդունուիլը, որով այլ եւս խնդիր ընելու տեղի չմնար։ Ցայտնի կը տեսնուի որ կեղակարծ զրոյցներով կ՚ուզեն դժուարութենէ ազատիլ։ 36. Թէ Հայերը ինքզինքնին միայն կաթողիկէ եկեղեցի կը ճանչնան, իբր ուղիղ հաւատքը անփոփոխ պահած, և հանգանակին մէջ չեն ըսեր ի մի սուրբ Եկեղեցի, այլ յոյ-սուրբ Եկեղեցի, և անով Հայոց եկեղեցին կ՚իմանան։ Կը պատասխանեն, հանգանակին մասին ըսուածն անհիմն և սուտ յայտարարելով, և բոլոր եկեղեցիներն ալ ընդունելնին վկայելով, որով Հայոց եկեղեցւոյ ներողամիտ սկզբունքը պաշտպանած կ՚ըլլան։ 37. Թէ Հայերը երեք տարբեր կաթողիկոսներ ունին որոնք տարբեր հաւատք և տարբեր միրոնութիւն ունին։ Այս կարգին հնագոյն կոչուած է Աղուանից աթոռը, զոր Աղուանեաց կը թարգմանեն լատիներէնին մէջ. երկրորդ Աղթամարինը, զոր Աքամար կը գրեն. և երրորդ Սսոյ աթոռը։ Քանի մը տարբերութիւններ ալ կը յիշեն. ինչպէս գինիով միրոնութիւն ընելը, և Յ[illegible] Հօր եւայլն բանաձեւը չգործածելը։ Կ՚աւարկեն եւս թէ երրորդ աթոռը հազիւ 50 տարիէ ասդին թողած է Հայոց մոլորութիւնները։ Կը պատասխանեն, մերժելով տարբերութիւնները, կը վկայեն թէ Աղուանից և Աղթամարի հետ հաւատքով և միրոնութեամբ միացած են, միայն թէ իրենք ինչ ինչ կէտերու մէջ Լատիններուն համակերպած են։ 38. Թէ Հայերը ուրիշ եկեղեցիներու մէջ մեղաց թողութիւն տալու իշխանութիւնը կորած կը կարծեն, նոյն իսկ միրոնութեան մէջ. վասնզի անոնք Քրիստոսի կողէն բղխած ջուրը բաժակին ջուրին վրայ կը մեկնեն, և ոչ միրոնութեան վրայ։ Կը պատասխանեն, մերժելով ամբաստանութիւնը, և ամէն եկեղեցիներու խորհուրդները ընդունելնին կը վկայեն։ 39. Թէ Հայերը մէկ կաթողիկոսութեան հաւատացեալներուն ուրիշ կաթողիկոսութեան պաշտօնեաներէն առած խորհուրդները վաւեր կ՚ընդունին, բայց պաշտօնէից ընդունածները անվաւեր կը ճանչնան։ Կը պատասխանեն, բացատրելով նուիրապետական յարաբերութեանց պահանջները, վասնզի Աղթամար հակառակ է Սսոյ դէմ, և Աղուանիցը կը խորշի Սիսի լատինասիրութենէն, թէ ոչ՝ հաւատքի և խորհուրդի տարբերութիւն չունին մէջերնին։ 40. Թէ Հայերը Լատին կամ Ցոյն եպիսկոպոսներէ և քահանաներէ տրուած մեղացներումը՝ Հայերու համար անվաւեր կը նկատեն, և Հայ պաշտօնեաներէ առնել կը հրամայեն, իսկ ոմանք ալ կը պնդեն թէ Աստուած կը շընորհէ ներումը, և ոչ պաշտօնեաներ, և անոր համար սովոր են կրկնել՝ Աստուած թողութիւն շնորհեսցէ։ Կը պատասխանեն, պաշտպանելով թէ Հայեր պէտք է Հայ պաշտօնէից դիմեն, այլ կ՚ընդունին ուրիշ եկեղեցիներու պաշտօնեաներէն տրուած ներումին վաւերականութիւնը, և միանգամայն պաշտօնէական իշխանութեան ձեւը։ 41. Թէ Հայերը անգամ մը շնորհքէ զրկուողներուն նորէն շնորհքի դառնալը անհնար կը կարծեն։ Կը պատասխանեն, ապաշխարութեան վարդապետութեան Հայոց կողմէն ընդունուած ըլլալը։ 42. Թէ Հայերը կը կարծեն որ միայն Քրիստոսի չարչարանքը բաւական է մեղաց թողութեան, առանց մարդկային գործակցութեան։ Կը պատասխանեն ի վեր հանելով ննդաւոր մեկնութեանց կէտերը։ 43. Թէ Հայերը մարդկային ազատութիւնը բաւական չեն սեպեր մեղանչելու համար, այլ դիւական փորձութեանց կը վերագրեն մեղքը։ Կը պատասխանեն, մերժելով խարդախեալ սութիւնները։ 44. Թէ Հայերը պատարագի մէջ ննջեցելոց համար չեն աղօթեր։ Կը պատասխանեն, թէ հիմնովին սուտ է։

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 45—56

1298. Կը շարունակէ. 45. Թէ Հայերը երբոր իրենցմէ մէկը մեռնի, ոչխար մը կամ արջառ մը եկեղեցւոյ եկեղեցի կը բերեն, մետաքսէ զգեստներով կը զարդարեն, պաշտօնեաներ դուրս կու գան, աղ կ՚օրհնեն, կենդանիին կու տան, ետքէն կը մորթեն, և միսէն կ՚ուտեն, միայն պատարագիչ քա-

հանայն չունէր։ Թէ այս բանը կ՚ընեն, ըսելով թէ մեռնողին թողութեան համար պէտք է արիւն թափուի, իբր թէ Քրիստոսի արիւնը չբաւէր։ Սակայն Յովհաննէս Դամասկացին ալ զիրենք յանդիմանած է այս տեսակ հրէական և հեթանոսական սովորութեանց համար։ Թէ Հայեր իրենց ըրածներուն մասին [illegible] անունով գիրք մըն ալ պատրաստած են Մանազկերտի ժողովին մէջ։ Կը պատասխանեն, բացատրելով մատաղի սովորութիւնը, իբր ողորմութեան նուէր, և ոչ մեղաց թողութեան պատարագ։ Թէ Դամասկացիին վերագրուածը չեն տեսած, բայց եթէ հեթանոսական սովորութեանց վրայ կը խօսի, աւելի Լատիններուն ակնարկած պիտի ըլլայ։ Մանազկերտի ժողովն ալ չենք ընդունիր, կ՚ըսեն։ 46. Թէ Հայերը ուտելիքներու մէջ սուրբի և անսուրբի խտրութիւններ կը դընեն Մովսիսական օրէնքներու հետեւողութեամբ, և թէ վանականներ խոզենի ուտելը դեւեր հալածելու արգելք կը կարծեն։ Կը պատասխանեն, թէ ինչինչ բաներ չուտելը, ոչ Մովսիսական օրէնքի, այլ տեղական ճաշակի հետեւանք է, իսկ վանականներ բնաւ միս չեն ուտեր։ 47. Թէ Հայերը պահք օրերը, միս, ձուկ, հաւկիթ, պանիր, կարագ, կաթ ու ձէթ չեն ուտեր, այլ միայն հաց, բանջարեղէն և գինի, որչափ որ ուզեն, իսկ առաջ յիշուած բաներն ուտողները անիծեալ և անհաւատ կը կոչեն։ Կը պատասխանեն, իրենց հնաւանդ կանոնը բացատրելով, ձէթին պահոց օրեր ուտուիլը կը յայտնեն, և ուտելու ու չուտելու մասին Պօղոսի թոյլատու վարդապետութիւնը ունենալնին կը վկայեն։ 48. Թէ Հայերը երկրորդ անկումը աններելի կը կարծեն։ Կը պատասխանեն, թէ սուտ է։ 49. Թէ Հայերը երրորդ և չորրորդ ամուսնութեան անցնողները անիծեալ և հեթանոս կը նկատեն, խորհուրդներէ կը զրկեն, մեռելնին ոչ տունին դուռնէն, այլ պատէն ծակ բանալով դուրս կը հանեն, և անոնց համար աղօթք ու պատարագ չեն մատուցաներ. իսկ եթէ երրորդ կինը թողու և 15 տարի խիստ ապաշխարութիւն կրէ, ներման կ՚ընդունին։ Կը պատասխանեն, երրորդ ամուսնութեան հին օրէնքով արգելուած ըլլալը, իսկ միւս պարագաները իբր մտացածին կը մերժեն։ 50. Թէ Հայերը մէկը ձեռնադրելէ առաջ խոստովանահօրմէն վըկայութիւն կ՚առնեն, և եթէ նա յայտնէ թէ պոռնկութեան մէջ ինկած է, չեն ձեռնադրեր։ Նոյնպէս ձեռնադրութենէ ետքն ալ եթէ պոռնկութեան մէջ իյնայ, խոստովանահայրեր կը յայտնեն և արգելել կուտան։ Կիներն ալ կը պարծենան թէ քահանաներ լուծել տուած են։ Անոր համար պոռնկութեան մէջ ինկողներ չեն խոստովանիր։ Կը պատասխանեն, թէ մասնաւոր պատահարներ կրնան հանդիպած ըլլալ, բայց ոչ կանոն է և ոչ սովորութիւն։ Իսկ բարի վկայութիւններ կը պահանջուին, բայց ոչ երբեք խոստովանութիւնները յայտնելով։ 51. Թէ Հայերը պոռնկութեան և հայհոյութեան մեղքերը աններելի կը համարին։ Կը պատասխանեն, տարբերելով աններելիութիւնը ծանր ապաշխարութեան պայմաններէն։ 52. Թէ Հայերը չնութեան, սոդոմականութեան, անասնապղծութեան, մարդասպանութեան, ուրացողութեան, և երկարնակ դաւանութեան մեղքերուն մէջ ինկողները՝ թէպէտ կ՚արձակեն, բայց մինչեւ մահը խորհուրդներէ կը զրկեն, և եթէ նորէն իյնան, այլեւս չեն արձակեր։ Կը պատասխանեն, մերժելով բացարձակ աններելիութիւնը, և երկարնակ դաւանութիւնը Նեստորականներուն կը պատշաճեցնեն։ 53. Թէ Հայերը կը ներեն քահանաներուն իրենց կնոջ հետ սոդոմականութեան մէջ գտնուիլ։ Կը պատասխանեն, թէ ինչպէս հնար է զայն գիտնալ, որ ներելու ալ առիթ ընծայուի, և առարկութեան սուտ ըլլալը կը հետեւցնեն։ 54. Թէ Հայերը կը ներեն որ նաեւ առանց պատճառի կաթողիկոսներ և եպիսկոպոսներ բանադրանքներ արձակեն, և կ՚ըսեն թէ մէկուն բանադրածը ուրիշէն չկրնար արձակուիլ։ Կը պատասխանեն, թէ օրէնք է որ եկեղեցական իշխանութիւններ իրարու դէմ չգործեն, այլ կաթողիկոս կրնայ եպիսկոպոսի բանադրածը արձակել։ 55. Թէ Հայերը չեն ընդունիր որ բանադրանքը արքայութենէ կը զրկէ, ինչպէս կը զրկեն պոռնկութեան, մարդասպանութեան, չնութեան, քահանայից երկրորդ ամուսնութեան, և երկարնակ դաւա-

նութեան մեղքերը։ Կը պատասխանեն, թէ առաջին մասը հակառակ է նախընթաց առարկութեան, մեղքերը կը զրկեն՝ եթէ անզեղջ կը մնան, իսկ երկարնակութիւնը կը մեկնեն միշտ նեստորականութեան վրայ։ 56. Թէ Հայերը՝ մահմետականութեան կամ հրէութեան գացող և նորէն Հայ եկեղեցին դարձողները չեն մկրտեր, այլ միայն ճակատէն կ'օծեն, և կը պարտաւորցնեն որ ուրացած տեղերնին երթան և հրապարակաւ խոստովանին։ Իսկ Յոյն կամ Լատին եկեղեցին գացող և անկէ դարձող, կամ թէ ուղղակի այն եկեղեցիներէ եկողները նորէն կը մկրտեն։ Կը պատասխանեն, մերժելով թէ հրապարակաւ խոստովանութեան պարտաւորութիւնը, և թէ յունադաւանները կամ հռոմէադաւանները կրկին մկրտելու զրոյցը։

**1299.** Կը շարունակէ. 57. Թէ Հայերը միւռոնի վաւերականութեան համար, շատ մը խունկեր ու նիւթեր և գինի կը խառնեն ձէթին, և կաթողիկոսի օրհնութիւնը անհրաժեշտ կը ցուցնեն, և առանց այդ միւռոնի մկրտութիւնը անվաւեր կը համարին, և երբոր քահանային մօտը միւռոն չունենայ՝ մկրտութիւնն ալ զանց կ'ընէ, իսկ անկնունք տղաքները կը կարծեն թէ պիտի մկրտուին Քրիստոսի արիւնով, որ լուսինի մէջ պահուած է։ Կը պատասխանեն, ընդունելով միւռոնի պատրաստութեան ձեւը, բացի գինի խառնելէն. կը պնդեն թէ միւռոն չգտնուած միջոցին՝ լոկ մկրտութիւն կը կատարուի, իսկ լուսինի մէջ պահուած Քրիստոսի արիւնը անխիղճ առասպելներ կը նկատեն։ 58. Թէ Հայերը մկրտութեան վաւերականութեան համար միւռոնն ու հաղորդութիւնը անհրաժեշտ կը նկատեն. և թէ մկրտութիւնը ի թողութիւն սկզբնական մեղաց չեն կարծեր։ Կը պատասխանեն, թէ երեք խորհուրդ միասին կը պաշտեն, բայց մկրտութիւնը առանց միւս երկուքի անվաւեր չեն կարծեր, ինչպէս որ ստիպողական պարագաներու մէջ ալ կը պաշտուի։ Իսկ մեղաց թողութեան խնդիրը քանիցս կրկնուած առարկութիւն մըն է։ 59. Թէ Հայերը միակերպ չեն մկրտեր, նիւթին համար գինի և կաթ ալ կը գործածեն, իսկ ձեւը ամէն պաշտօնեայ ուզած կերպովը կ'ընէ։ Այս տեղ տեսակ տեսակ ձեւեր ալ կը յիշեն։ Կը պատասխանեն, բացէբաց մերժելով այսպիսի տարբերութիւնները, և ընդարձակ բացատրութիւններ ալ կու տան։ 60. Թէ Հայերը յունադաւանութենէ և հռոմէադաւանութենէ եկողները կրկին կը մկրտեն, իսկ մէկ կաթողիկոսի հպատակութենէն միւս կաթողիկոսին անցնողները նորէն իրենց միւռոնով կ'օծեն։ Կը պատասխանեն, թէ բոլորովին սուտ և չլսուած զրոյցներ են։ 61. Թէ Հայերը կ'ըսեն որ մկրտուածները ոչ թէ մեղքէ կը սրբուին, այլ միայն քրիստոնեայ եկեղեցւոյ անդամ և խորհուրդներ ընդունելու յարմար կ'ըլլան, և վերջին դատաստանէն ետքը արքայութիւն կ'երթան։ Կը պատասխանեն, վերջին կտորին մասին 7'րդ առարկութեան համար ըսածնին կրկնելով։ 62. Թէ Հայերը 12 տարեկանէ վար եղողները անմեղ կը նկատեն, վասնզի մարմնական ցանկութեան ենթարկեալ չեն, և ըստ այսմ անոնք ի թողութիւն մեղաց մկրտած չեն ընդունիր։ Կը պատասխանեն, 4'րդ, 13'րդ, և 58'րդ առարկութեանց հետ բաղդատելով, և հակասութիւնները ցուցնելով։ 63. Թէ Մեծ Հայոց և Փոքր Հայոց Հայերը դրոշմի խորհուրդ չունին, և թէ քահանայէ ու եպիսկոպոսէ զատ անձէ տրուած մկրտութիւնը անվաւեր կը նկատեն։ Կը պատասխանեն, մկրտութեան հետ տրուած դրոշմը յիշելով, և ենթադրեալ անվաւերութիւնը մերժելով։ 64. Թէ Փոքր Հայոց կաթողիկոսը չընդունիր դրոշմին վաւերականութիւնը, և թէ ինքն կու տայ իր քահանաներուն այդ իշխանութիւնը։ Կը պատասխանեն, թէ բոլորն ալ նախատալից ենթադրութիւններ են։ 65. Թէ Հայերը մկրտութեան ատեն մարմինին ինը անդամներուն վրայ եղած օծումները, ամէն օծումներու տեղ կը նկատեն, և դրոշմի և վերջին օծումի, և քահանայութեան և եպիսկոպոսութեան օծումներ չունին։ Այլ երբ քահանայ մը կը մեռնի, գլուխն ու ճակատը ու աջը կ'օծեն, և ժողովուրդէն նուէրներ կը հաւաքեն առաջին պատարագի պէս, և դրան առջեւ կենդանիներ կը մորթեն, ինչպէս 45'րդ առար-

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 57—65

*կութեան մէջ ըսուեցաւ։ Կը պատասխանեն, թէ այն ինը տեղ օծումները դրոշմի խորհուրդ են, թէ Վերջին Օծում Հայոց մէջ սովորութիւն եղած չէ, թէ քահանայից և եպիսկոպոսաց օծումնե՛րը՝ Շնորհալիէն սկսելով 200 տարիէ առաջ կը կատարուին, անկէ առաջ Յունաց սովորութեան համեմատ չէին օծուիր։ Իսկ ննջեցեալ քահանաներու գլուխը չօծուիր, նուէր չհաւաքուիր, և կենդանիներ մորթելն ալ պարզապէս ողորմութեան նշանակութիւն ունի։*

**1300.** *Կը շարունակէ.* 66. *Թէ Հայերը չեն ընդունիր, որ Կանոն կոչուած աղօթքի ատեն, որ է Առեալ զհացն խօսքերով սկսած հատուածը, սրբագործութիւն կը կատարուի, այլ թէ այն կը լրանայ Հոգւոյն Սրբոյ վերակոչութեամբ, և միանգամայն պարզ փայտեղէն ու խեցեղէն սկիհով, հասարակ զգեստով, և դուռերը փակելով պատարագ կը մատուցանեն։ Կը պատասխանեն, թէ վերակոչութեան ձևը Աթանասի, Ոսկեբերանի և Բարսեղի պատարագամատոյցներէն առնուած է, թէ սրբագործութիւնը կ'ընդունին Լատիններու նման, թէ վերջին պարագաները Մեծ Հայոց մէջ միայն անդտեղ մնացած են անհաւատներուն վախէն, բայց վերացման ատեն դուռերը կը բանան և ժողովրդեան ցոյց կու տան։* 67. *Թէ Հայերը Հաղորդութեան խորհուրդը իբր նշանակ և օրինակ կը մեկնեն, և ոչ իբր փոխարկութիւն ու գոյացափոխութիւն. թէ Ներսէս վարդապետ մը ըսած է որ Առէք կերէք ըսուած ատեն Քրիստոսի մեռած մարմինը կ'ըլլայ, իսկ Որով աղօթքներուն ատեն կենդանի կը դառնայ. և թէ Դամասկացին ըսած է՝ որ Հայոց եկեղեցին խորհուրդներ չունի։ Կը պատասխանեն, թէ իրենք իսկական ներկայութիւն կ'ընդունին և ոչ նըմանութիւն, և յառաջ կը բերեն պատարագամատոյցի կտորները։ Ներսէս վարդապետին, որ Լամբրոնացին պէտք է ըլլայ, ասանկ բան մը ըսած ըլլալէն տեղեկութիւն չունենալնին կը յայտնեն. և Դամասկացիին համար չեն կարծեր, որ անանկ բան ըսած ըլլայ, որովհետև իրենք մէկ խորհուրդները կը պաշտեն, զորս միասին կը բացատրեն. և թէ Վերջին Օծումն ալ յունականէն լատինական ձևի վերածել կ'աշխատին։* 68. *Թէ Հայերը կը կարծեն որ պոռնկութեան մէջ ինկող քահանային պաշտած խորհուրդները չեղեալ կը նկատուին, և թէ բարեպաշտ աշխարհականներ կրնան սրբագործուած հաղորդութիւնը բաշխել։ Կը պատասխանեն, թէ Հայոց մէջ ասանկ բան երբեք ըսուած չէ։* 69. *Թէ Հայերը, թէպէտև պոռնկութեան մէջ ինկողները քահանայական իշխանութենէ զրկուած կ'ըսեն, բայց նոյնը չեն ընդունիր, եթէ քահանայն հերետիկոսութեան, հրէութեան, մահմետականութեան, մարդասպանութեան, սուտերդմնութեան, և ուրիշ ոճրագործութեանց մէջ իյնայ։ Կը պատասխանեն, մերժելով այդ ենթադրութիւնները. միայն կը դնեն, որ մարդասպանութիւնը մեղք չեն սեպեր, եթէ քահանայն անհաւատից դէմ պատերազմելով, կամ քրիստոնեաներուն վրայ յարձակողներուն դէմ ելլալով սպանութիւն կը գործէ։* 70. *Թէ Հայերը Հաղորդութեան խորհուրդով մեղքերու կամ մեղաց պատիժներու թողութիւն չեն ընդունիր, այլ միայն կ'ըսեն թէ հաղորդուողին մարմինը Քրիստոսի մարմնոյն հետ կը միանայ, և անոր համար մինչեւ երեք օր արիւն հանել կ'արգիլեն, և միանգամայն կ'ըսեն թէ հաղորդութիւնը հիւանդութիւններէ և արկածներէ կը պահպանէ։ Կը պատասխանեն, մեղաց թողութիւն ընդունելնուն համար վկայութիւններ յիշելով, և կը յաւելուն թէ Քրիստոսէ հոգևոր բարութեանց հետ մարմնաւորներ ալ կը շնորհուին։* 71. *Թէ Հայերը Մանազկերտի ժողովով արգիլեցին բաժակին ջուր խառնել, և թէ ջրախառն պատարագը չեղեալ, և անոպէս պատարագ մատուցուած եկեղեցին պղծեալ կը համարին։ Կը պատասխանեն, Մանազկերտի ժողովը մերժելով, բայց կը մերժեն նաև ջրախառն պատարագը չեղեալ և եկեղեցին պղծեալ կարծելու առարկութիւնը։* 72. *Թէ Հայերը կը կարծեն որ յունադաւան կամ հռոմէադաւան եղող քահանաներ պատարագելու կարողութիւնը կը կորսնցնեն։ Կը պատասխանեն, մերժելով։* 73. *Թէ Հայերը երկաբնակները չեն հաղորդեր, եթէ նախապէս միաբնակութեան դարձած*

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 66—74

և նորէն Հայոց կողմէ մկրտուած չըլլան, և թէ Հայ քահանաներ պատարագած ատեննին կը նզովեն երկաբնականները և բաժակին ջուր խառնողները և պատկերապաշտները։ Կը պատասխանեն, որ Նեստորականները և ուրիշ հերետիկոսներ չեն հաղորդեր, մինչև որ դառնան, այլ նորէն չեն մկրտեր. նզովքի խօքը կը մերժեն, և Հայերուն միշտ եկեղեցիներուն մէջ պատկերներ ունեցած ըլլալը կը վկայեն։ 74. Թէ Մեծ Հայոց եկեղեցիներուն մէջ խաչելութեան և սուրբերու պատկերներ չեն գտնուիր։ Կը պատասխանեն, թէ միշտ եղած են և կան, բայց ոչ առատութեամբ, և երբեմն վերցուած են Սարակինոսներու վախէն։

**ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 75—78**

**1301.** Կը շարունակէ. 75. Թէ վարդապետ մը այսինչ տեղ մը եկած ատեն, քահանային հաղորդութիւնը ժողովուրդին ցուցնելը տեսնելով, զայն յանդիմանած և արգելած է։ Կը պատասխանեն, թէ սանկ եղելութիւն մը Յակոբ կաթողիկոսին գրած էր Ներսէս Որմիոյ եպիսկոպոսը, որ ստութեամբ Մանազկերտի արքեպիսկոպոս անունը առած էր։ Ասոր վրայ Բարսեղ Իկոնիոյ և Բարսեղ ատենադպիր եպիսկոպոսները քննիչ ղրկուեցան Կանչի աւանը, որոնք ժողովուրդը, Մանաճիհր վարդապետը և Տիրացու քահանան քննելէ ետքը երդմամբ հաստատեցին այժմեան Մխիթար կաթողիկոսին առջև, թէ Ներսէսի գրածը հիմնովին սուտ էր։ Այս պատճառով ժողովուրդը պիտի սպաննէր Ներսէսը ու իր գրագիր եղբօրորդին, եթէ չփախչէր և պապին մօտ չապաստանէր, ուր այդ ամէն սուտ առարկութիւնները յօրինած է։ 76. Թէ երեք Հայեր, որոնք Հայոց ծէսով մկրտուած էին, Պոլոնիոյ (Bologna) մէջ կրկին լատին ծէսով մկրտուեցան, և երբ Փլորենտիա (Firenze) եկան երկու Հայեր անոնց հարցուցին թէ իրաւ բաղնիքի լուացք ըրա՞ծ են. և այդ բացատրութիւնը անոնց ընդունել տալու համար այնչափ ծեծեցին, որ մէկը մեռաւ, և երկուքը բանտարկեցին, մինչև որ հաւանեցան, և նորէն Հայոց ծէսով մկրտեցին, որպէսզի կարենան հաղորդուիլ։ Կը պատասխանեն սանկ եղելութիւն մը լսած իսկ չեն, բայց և կը զարմանան որ հռոմէադաւան Իտալիոյ մէջ կրկնամկրտութիւններ տեղի կ'ունենան եղեր։ 77. Թէ Փոքր Հայոց կաթողիկոսը ձեռբակալել տուաւ լատին ծէսով մկրտուած եկեղեցականներ և աշխարհականներ, և զանոնք նախատեց գլուխնին և մօրուքներուն մէջտեղը ածիլել տալով, և հագուստնին պատռելով, և բանտարկեց լատին մկրտութիւնը չուրանալնուն համար։ Կը պատասխանեն թէ այդ անձերը պատժուեցան ոչ թէ լատին մկրտութիւն ընդունած ըլլալնուն համար, այլ շատ մը չփոթ զրոյցներով ժողովուրդը խռովելնուն, և կրկնամկրտութիւններ և կրկնաձեռնադրութիւններ ընելնուն համար։ Բանտարկութիւննին ալ երկար չեղաւ, այլ ներում ստացան՝ երբոր օրէնքին հպատակեցան։ Այդ առարկութիւններ առանց անուն տալու Յակոբ կաթողիկոսին կ'ակնարկեն, թէպէտ դիպուածներուն որոշ յիշատակները չունինք։ 78. Թէ իրենց մկրտութեան և ձեռնադրութեան վրայ կասկածող արքեպիսկոպոսներ, Փոքր Հայոց կաթողիկոսին մօտ եկան, նա անոնց հրամայեց Ա. Լատիններու ծէսով չպատարագել։ Բ. Լատիններու օրէնքով պահք ու ծոմ չպահել։ Գ. Կրկին մկրտութիւն չընել ըսելով թէ Հայոց մկրտութիւնը լատինականէն լաւ է։ Դ. Բնաւ հայ մը հռոմէադաւանութեան չդարձնել, ըսելով թէ լաւագոյն է իբր Հայ դժոխք երթալ քան թէ իբր լատին արքայութիւն երթալ։ Ե. Տղոց լատիներէն չսորվեցնել, և իրօք ալ վեց եպիսկոպոսներ ձեռնադրած ատեն անոնցմէ ստորագրութիւն առաւ, թէ իրենց վիճակներնուն մէջ լատիներէն չսորվեցնեն և լատին քարոզիչ պիտի չընդունին։ Զ. Թէ պապը Արևելքի եկեղեցիներուն գլուխ պիտի չընդունին, որովհետև ծովէն ասդին մինչև Թաթարաստան ինքն է եկեղեցւոյ գլուխը։ Եւ երբոր վերոյիշեալ արքեպիսկոպոսները չհաւանեցան, անոնց մէկը Կիպրոս անցաւ, ուր լսեց որ կաթողիկոսը թագաւորին գործակցութեամբ լատինականութեան անցնողները ձեռբակալել տուաւ, և խիստ բանտերու մէջ փակեց, և ինչքերնին գրաւեց։ Կը պատասխանեն, թէ երկու եպիսկոպոսներն են Սիմէոն Պէկ և Ներսէս Պաղոն, որոնք Յակոբ կաթողիկո-

ափ օրով Կիլիկիա եկան, և երկրին մէջ խռովութիւն սերմանեցին՝ միտքերը շփոթելով և կրկնամկրտութիւններ կատարելով։ Կաթողիկոսը զիրենք խրատեց, բայց իրենց լատինական ձեւեր գործածել չարգելեց, ինչպէս ուրիշներուն ալ չէր արգելեր, այլ միայն հրամայեց որ միտքեր չյուզեն և խռովութիւն չսերմանեն։ Այս կերպով մի առ մի կը հերքեն իբր Յակոբ կաթողիկոսէ տրուած վերոյիշեալ հրամանները, և վեցերորդ կէտին վրայ կ՚աւելցնեն թէ իրեն ալ հարցուցինք, և սաստիկ խօսք ըսած չըլլալը վկայեց։ Կը վերջացնեն, թէ ոչ Լատինութեան հետեւողներու, այլ խռովութիւն հանողներու դէմ խստութիւններ գործածուեցան։ Այդ ամէնը կ՚ակնարկեն Յակոբ կաթողիկոսի մասին պատմածներուս (§ 1279), բայց և կը հաստատեն Յակոբի ուղղութեան մասին գրածնիս (§ 1284)։

**ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 79—87**

1302. Կը շարունակէ. 79. Թէ Հայերը Յոյն կամ Լատին եկեղեցւոյ մէջ մկրտուողները երկարամեայ, իսկ լոկ հաղորդուողները հրնգամեայ ապաշխարութեան կ՚ենթարկեն, հրամայելով շարունակ պահք պահել, զգուշանալով միսէ, ձուկէ, կաթէ, պանիրէ և հաւկիթէ։ Կը պատասխանեն, թէ ապաշխարութիւնը կը դնէին միայն անոնց որ յանարգանս Հայ եկեղեցւոյ նորէն կը մկըրտուէին։ Պահեցողութեան ձեւը, կը հաստատեն Հայոց եկեղեցւոյ սովորութեամբ, իսկ ծոմի համար կ՚ըսեն թէ միայն մեծպահոց մէջ կը պահուի մինչև ժամը ինը, և ժամերգութենէ ետքը կերակուր կը ճաշակուի։ 80. Թէ Հայերը մեծպահքի և ուրիշ տասը շաբաթներու մէջ, միայն շաբաթ և կիրակի կը պատարագեն, և թէ տարւոյն ուրիշ մասերուն մէջ այս երկու օրերէն դուրս պատարագել զանց կ՚ընեն, և թէ գլխաւոր սրբոց տօները շաբաթ օր, և Վերափոխումը ու Խաչվերացը կիրակի օր կը կատարեն։ Կը պատասխանեն, թէ Մեծ Հայոց մէջ հին սովորութիւններ կը պահուին, թէպէտ Փոքր Հայոց մէջ Լատինաց նմանողութիւններ ընդունուած են։ Մեծպահքէ դուրս միայն Առաջաւորաց՝ և ոչ ուրիշ շաբաթներու մէջ պատարագին լռելը կը յայտարարեն։ 81. Թէ Հայերէն անոնք որ շաբաթապահք պահած են Աստուածայայտնութեան ճրագալոյցին կը հաղորդուին, իսկ պահած չեղողներ տօնին առտուն, և թէ կը նզովէին դեկտեմբեր 25՚ին Ծնունդ տօնողները, և թէ ոմանք աւագ հինգշաբթի և Զատկի ճրագալոյցին ալ կը հաղորդուին։ Կը պատասխանեն, մերժելով յիշուած նզովքին ստուգութիւնը, և յիշելով հնաւանդ սովորութեան պահպանութիւնը Մեծ Հայոց մէջ։ 82. Թէ Հայերը խոստովանութիւնը կը կատարեն ընդհանուր բացատրութիւններով, և ոչ իւրաքանչիւրը իւր մեղքը քահանային յայտնելով. թէ երբ կը խոստովանին, չեն ըսեր որ մեղանչեցին, այլ թէ սատանան խաբեց. թէ կը վախնան խոստովանիլ որ քահանայն չյայտնէ. թէ քահանայն ընդհանուր արձակում կու տայ, թէ արձակումի հաստատուն ձեւ չունին, թէ ապաշխարութիւնը չկրացուցած հաղորդուիլը կ՚արգելեն, և կը կարծեն թէ ընդհանուր արձակումը նաև առանց զղջումի մեղքերուն թողութեանը կը բաւէ։ Կը պատասխանեն, բոլորն ալ ստելով և հերքելով՝ ոմանց պատահական զեղծումները ընդհանուր կանոն և սովորութիւն չլինելը յայտնելով, և այսպիսի զրպարտութիւններ գըրողներուն կը պատշաճեցնեն մարգարէին խօսքերը, Անէծք և դառնութիւն և նենգութիւն լի է բերան այսպիսեաց, և ի ներքոյ լեզուի նոցա ցաւք և վաստակք (ՍԱՂ. Թ. 7)։ 83. Թէ Հայերը հոգեվարները կը հաղորդեն, բայց երբ վերջին վայրկեանի մէջ են, լոկ բերանը կը դպցնեն, և կամ հաղորդութեամբ կը խաչակնքեն, և զայն բաւական կը սեպեն։ Կը պատասխանեն, թէ հաղորդութիւնը կը տրուի ուզողներուն, միայն թէ իրապէս կարենան զայն ընդունիլ։ 84. Թէ Հայերը կը կարծեն որ քահանաներ, եպիսկոպոսներ և կաթողիկոս՝ արձակելու և կապելու իշխանութիւն ունին հաւասարապէս։ Կը պատասխանեն թէ, վարչական իշխանութեան տարբերութիւններ կ՚ընդունին, իսկ կապելու և արձակելու մասին պատրաստակամութիւն կը յայտնեն Լատիններուն համակերպելու, եթէ պահանջեն։ Անցողաբար կը յիշեն թէ Նիկիոյ ժողովը Հռոմի պապը բոլոր եկեղեցիներու գլուխ

*վճռած ըլլայ, թէպէտ այս ճիշդ չէ։ Բայց ինչպէս ուրիշ գլուխներու մէջ ալ տեսնուեցաւ, ամէն տեսակ զրոյց առանց դիտողութեան կ'ընդունին Լատինները չվշտացնելու համար։* 85. *Թէ Հայերը կ'ըսեն որ Հռոմի պապերը Նիկիոյ ժողովէն առաջ ուրիշ պատրիարքներու վրայ իշխանութիւն չունէին, և Նիկիոյ ժողովով առած են, Քաղկեդոնի ժողովին պատճառով կորսնցուցին, և թէ այժմ Հայոց կաթողիկոսը կը վայելէ այդ իշխանութիւնը։ Կը պատասխանեն, թէ հակառակասիրութեան խօսքե՛ր են, որոնք լսուած ալ չեն։* 86. *Թէ Հայերը կ'ըսեն, որ Հռոմի պապը միայն Լատիններուն վրայ իշխանութիւն ունի։ Կը պատասխանեն, թէ պապին իշխանութիւնը ճանչցած են։* 87. *Թէ երբ Հայոց թագաւորը կաթողիկոսին հարցուց, որ եթէ պապը զինքը բանադրած է, ինչ կը կարծէ, կաթողիկոսը պատասխանեց, թէ զայն բանադրուած չկարծեր, վասնզի պապը անոր վրայ իշխանութիւն չունի։ Կը պատասխանեն, թէ թագաւորը մեռած է, բայց Յակոբ կաթողիկոս կը վկայէ թէ ասանկ հարցում ալ իրեն եղած չէ, և թէ իրենք ասանկ բան լսած չեն։*

**1808**. *Կը չարունակէ։* 88. *Թէ Հայերը տարօրինակ ձևեր ունին իրենց կաթողիկոսներուն ընտրութեան համար։ Աղուանեաց, այսինքն Աղուանից, և Աղթամարի կաթողիկոսները, իրենց կենդանութեան յաջորդնին կ'ընտրեն և կ'օծեն, այլ մինչև նախորդին մահը չեն պաշտօնավարեր, և մեռնելէն ետքը Թաթարաց կայսեր կ'երթան և անկէ իշխանութիւն և հաստատութիւն կ'ընդունին, ինչ որ Պարսից Շապուհ թագաւորին օրէն սկսած օրէնք մըն է։ Թէ այս առաջին անգամ և թէ իւրաքանչիւր տարի մեծ գումարներ կը վճարեն Թաթար կայսեր, իրենք ալ իրենց հպատակներէն թէ առաջին անգամ և թէ տարեկան գումար մը կը ստանան, իւրաքանչիւր քահանայէ տարեկան զոնէ մէկ ֆլորէն, և իւրաքանչիւր հասարակութենէ տարեկան զոնէ վեց կըռօս։ Իսկ Փոքր Հայոց կաթողիկոսներուն մեռնելէն ետքը, թագաւորը ուզած եպիսկոպոսները կը հաւաքէ, որոնք երեք ընտրելի կը ներկայացնեն, թագաւորն ալ անոնցմէ աւելի վճարողը կաթողիկոս կ'ընտրէ։ Այժմեան կաթողիկոսը առաջին անգամ* 50 *հազար կըռօս վճարեց, և տարուէ տարի ալ* 20 *հազար կը վճարէ թագաւորին, որ երբ ուզէ կրնայ զայն պաշտօնանկ ընել կամ ուրիշ կերպով պատժել։ Կ'առարկեն ևս* 89. *Թէ Աղուանից և Աղթամարի կաթողիկոսները իրենց իշխանութիւնը Արևելքի կայսրէն կ'առնեն, որ անոնց կապելու և արձակելու իշխանութիւն կու տայ, և կը հրամայէ որպէս զի տեղական կառավարիչներ ստիպեն և պատժեն կաթողիկոսին չհնազանդողները։ Թէ նոյնպէս կը կատարուի Փոքր Հայոց կաթողիկոսին համար ալ իրենց թագաւորին կողմէ։ Այս թագաւորն է որ իրեն սահմանին եպիսկոպոսներն ու քահանաներն ալ կ'ընտրէ, վճարմանց փոխարէն, և ձեռնադրութեան համար կաթողիկոսին և եպիսկոպոսներուն կը հրամայէ։ Թէ վերջապէս Հայերուն մօտ ամէն ընտրութիւն և ձեռնադրութիւն և խորհուրդներու մատակարարութիւն՝ միշտ դրամական վճարումով կը կատարուի։ Կը պատասխանեն, այդ ամէնէն ինչինչ ուղղելով և ինչինչ բացատրելով։ Թէ Աղուանից և Աղթամարի կաթողիկոսներ Թաթարաց խանին կը դիմեն, արտաքին կերպով իշխանութիւննին ճանչցնել տալու և ոչ թէ հոգևոր իշխանութիւն ստանալու համար։ Որովհետև նոյն իսկ իրաւունքնին զանձելու համար պարտաւոր են Թաթարաց խանէն արտօնուած ըլլալ։ Թէ դրամական վճարումները բռնակալ տէրութեան բռնադատական պահանջներ են։ Թէ Սսոյ կաթողիկոսի ընտրութեան համար երբե՛ք դրամական վճարման խնդիր չըլլար, այլ ամէն արքեպիսկոպոսներ, եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ և աւագերէցներ, թագաւորի հրամանով կը հաւաքուին, և կնքեալ տոմսով իրենց քուէն կու տան եպիսկոպոսներէն, վարդապետներէն, վանահայրերէն և վանականներէն որուն որ կ'ուզեն, և կը յանձնեն թագաւորին, որ երբ քուէները շատ ցրուած են, կը կրկնէ որ երկուքի կամ երեքի վրայ համաձայնին, և անոնցմէ, որն որ ուզէ թագաւորը կ'ընտրէ, ժողովին մէջ ծնրադիր անոր մատը*

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 88—89

մատանին անցընելով, ուսկից ետքը օծումը կը կատարուի ըստ կանոնի։ Թէ Թագաւորը չկրնար ինքնիրեն կաթողիկոս պատժել կամ պաշտօնէ ձգել, այլ խնդիր եղած ատեն եպիսկոպոսաց ժողով կը գումարէ, և անոնց որոշման համեմատ կը վճռուի։ Թէ Թաթարաց խանը և Փոքր Հայոց թագաւորը երբեք հոգևորական իշխանութիւն չեն տար, և ոչ ալ կապելու և արձակելու իշխանութիւն, այլ միայն սեփական իշխանութիւննին համարձակ գործածելու արտօնութիւն։ Թէ Փոքր Հայոց եպիսկոպոսներուն թագաւորի հաւանութեամբ ընտրուիլը հնաւանդ է բոլոր վանքերուն թագաւորներու հովանաւորութեան ներքև ըլլալուն, և վանքերուն ալ միճակներու հետ կապուած ըլլալուն։ Իսկ Մեծ Հայքէ ընծայագիրով եկածները կաթողիկոսը համարձակ կը ձեռնադրէ։ Թէ անհիմն է բոլորովին որ թագաւորը քահանայից ընտրութեան միջամտէ և դրամ առնայ։ Թէ վերջապէս բոլորովին սուտ է որ Հայերը ամէն ձեռնադրութիւն և խորհուրդ դրամով կը կատարեն, ուրիշ բան եթէ երբեմն ձեռնադրեալը ձեռնադրութենէն առաջ կամ ետքը եպիսկոպոսին նուէր մը ընէ, ոչ իբր գին կամ պայման, այլ իբր կամաւոր ընծայ։

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ
90—99

1304. Կը շարունակէ։ 90. Թէ Հայերը կը կարծեն որ Պետրոսին տրուած իշխանութիւնը անձնական էր, և յաջորդներու չանցաւ։ Կը պատասխանեն, թէ յաջորդներու իրաւունքին մասին 84'րդ առարկութեան մէջ յայտարարած են։ 91. Թէ Հայերը կ'ըսեն, որ Հռոմի պապը ընդհանուր իշխանութիւնը ոչ Քրիստոսէ, այլ Նիկիոյ ժողովէն առին, և ետքէն զայն իւրացուցին։ Կը պատասխանեն, թէ սանկ բան իրենց մէջ լսած չեն։ 92. Թէ Հայերը միայն երեք աստիճան կ'ընդունին, որք են դպրութիւն, սարկաւագութիւն և քահանայութիւն, թէ եպիսկոպոսները առանց դրամի ձեռնադրութիւն չեն ըներ, թէ կաթողիկոսէ զատ ոչ ոք կրնայ եպիսկոպոս ձեռնադրել, թէ կաթողիկոսն ալ առանց դրամի չձեռնադրեր, թէ Մեծ Հայոց մէջ ձեռնադրող և ձեռնադրեալ հասարակ զգեստներով կը մնան։ Կը պատասխանեն, թէ դպրութեան մէջ կու տան դռնապանութիւն, ընթերցողութիւն և ջահընկալութիւն, և թէ անկէ ետքը կիսասարկաւագ կը ձեռնադրեն, որուն մէջ կը միացնեն երդմնեցուցչութիւնը ու կիսասարկաւագութիւնը, որով կը լրանան հինգ աստիճաններ, որոնցմէ ետքը կու տան սարկաւագութիւն և քահանայութիւն, և երկարօրէն կը բացատրեն ձեռնադրութեան ծէսերը և քահանայութեան օծումը։ Կը հերքեն դրամով խորհուրդ պաշտելու զրպարտութիւնը, եպիսկոպոսական ձեռնադրութեան կաթողիկոսին վերապահուած ըլլալը իբր ազգային սովորութիւն կը պաշտպանեն, և Մեծ Հայոց մէջ եկեղեցական զգեստներու կիրառութեան տարածուիլը կը ծանուցանեն։ 93. Թէ Հայերը կը ներեն սարկաւագութենէ ետքը ամուսնանալ, և անկէ ետքը քահանայանալ։ Կը պատասխանեն, թէ այդ ներումը կը տրուի միայն դպրութենէ ետքը։ 94. Թէ Մեծ Հայոց Հայերը սարկաւագի ձեռնադրութեան ատեն աւետարան և ուրար չեն տար, և եպիսկոպոսի ձեռնադրութեան ատեն աւետարանը պարանոցին վրայ չեն դներ, և գլուխն ու ձեռուըները չեն օծեր։ Կը պատասխանեն, թէ իրենք այս բաները Փոքր Հայոց մէջ կը կատարեն, և Մեծ Հայոց կաթողիկոսներուն ըրածէն տեղեկութիւն չունին։ 95. Թէ Մեծ Հայոց կաթողիկոս մը քահանայի մը հրաման տուած է սարկաւագ ձեռնադրելու, և 96. Թէ Փոքր Հայոց կաթողիկոսներուն եպիսկոպոս ձեռնադրած ատեն, ուրիշ եպիսկոպոսներ չեն մասնակցիր ձեռնադրութեան։ Կը պատասխանեն և երկու կէտերն ալ իբր անհիմն կը հերքեն։ 97. Թէ Հայոց կաթողիկոսներ պաշտօնէ կը զրկեն այն եպիսկոպոսները որոնք տարեկան սակը չեն վճարեր, և ուրիշներ կը ձեռնադրեն, որով մէկ միճակի վրայ մինչև երեք կամ չորս եպիսկոպոսներ կը գտնուին, բայց երբ վճարեն, նորէն կը հաստատեն։ Ինչպէս նաև չվճարողները կը բանադրեն և անոնց միւռոն չեն տար։ Կը պատասխանեն, թէ եպիսկոպոսները պատժել կամ պաշտօնէ ձգել և ուրիշ ձեռնադրել կը հանդիպի ոչ թէ չվճարելնուն համար, այլ երբ անհաւատից երկիրները գտնուելով կ'անսաստեն, կամ ու-

*րիչի վիճակ կը յափշտակեն, կամ մոլորութիւն կը քարոզեն, կամ ժողովուրդը կը գայթակղեցնեն, և կոչին չեն անսար։ Բայց եթէ յայտնուի որ զրպարտութեամբ և սուտ վկայութեամբ դատապարտուեցան, պարտք կը սեպեն աթոռնուն դարձնել։ 98. Թէ Փոքր Հայոց կաթողիկոսները եպիսկոպոս ձեռնադրած ատեննին Լուսաւորչի Աջը կը դնեն անոր գլխուն վրայ, և անկէ կը կարծեն ձեռնադրութեան վաւերականութիւնը, և Մեծ Հայոց կաթողիկոսներէն ձեռնադրուած եպիսկոպոսները չեն ընդունիր, անոնց Լուսաւորչի Աջը չունենալնուն համար։ Կը պատասխանեն, թէ Լուսաւորչի Աջը ձեռնադրութեան ատեն կը գործածեն, բայց վաւերականութիւն չեն վերագրեր. Աղթամարի և Աղուանից եպիսկոպոսներն ալ իբր եպիսկոպոս կ'ընդունին, միայն չեն հաղորդուիր անոնց հետ ըմբոստ ըլլալնուն համար, բայց երբ կը հնազանդին՝ անմիջապէս իբր եպիսկոպոս կ'ընդունուին։ 99. Թէ Իտալիա եկող Հայեր ինքզինքնին հալածուած եպիսկոպոսներ կը ձեւացնեն, կամ արքեպիսկոպոս կը հռչակեն, մինչ Հայեր արք'եպիսկոպոս չունին, և դրամով եպիսկոպոսութիւններ կու տան, քահանաներ և սարկաւագներ կը ձեռնադրեն, և կը հալածեն այն Հայերը որ հռոմէական ծէսով կը մկրտուին կամ հռոմէադաւանութեան կը հետեւին։ Կը պատասխանեն որ եթէ Իտալիոյ մէջ զեղծումներ տեղի ունեցած են, ընողներու և ընդունողներու պատկանող մի բան է. կը հաստատեն թէ Հայոց մէջ արքեպիսկոպոսութիւն կայ, և թէ իրենց լսածին համեմատ՝ հայադաւան եղողներ Իտալիոյ մէջ կը հալածուին, և ոչ թէ կը հալածեն։*

**1305**. *Կը շարունակէ։* 100. *Թէ Հայերը պակի ատեն երկու կողմերուն հաւանութիւնը յայտնող բացատրութիւններ չունին, և ծնողաց ու ծանօթից բանադատութեամբ նախերար չուզողներ կը պսակեն։ Կը պատասխանեն, թէ յայտնի բացատրութիւններ ունին, և յառաջ կը բերեն քահանայական խրատը, և «ԵԼ Ե» հարցումները, իսկ բանադատութիւն ընողները եկեղեցական և*

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ
100—109

*դրամական միջոցներով պատժելնին կը յայտնեն։* 101. *Թէ Հայերը թէպէտ եօթը աստիճանի ազգակցութիւն կ'ընդունին, բայց մինչեւ երրորդ և նուազագոյն աստիճանի մէջ պսակուողներն ալ չեն լուծեր։ Կը պատասխանեն, թէ ազգակցութեան արգելիչ աստիճանները մինչեւ հինգերորդ կը հաշուեն, և եթէ սխալմամբ երկրորդ կամ երրորդ աստիճանի ամուսնութիւններ եղած են, կը լուծեն։* 102. *Թէ Հայոց եպիսկոպոսներ և քահանաներ կը լուծեն ամուսնութիւնը, եթէ ամուսիններէն մէկը միւսին հաճելի չէ, և եթէ պատշաճապէս կը վճարեն։ Կը պատասխանեն, թէ այլ եւս այսպիսի լուծումներ իրենք չեն ըներ, թէպէտ Մեծ Հայոց մէջ երբեմն պատահի, այլ միայն ներքիններուն և դիւահարներուն պսակը կը լուծեն եօթը տարի ետքը։* 103. *Թէ Հայերը բազմակնութիւնը կը ներեն, վաճառականութեամբ շրջողներ ամէն տեղ մէկ մէկ կին կ'ունենան, թէ միեւնոյն տեղ երկու կին առնողներ ալ կ'ըլլան, թէ ապօրէն զաւակները իբր օրինաւոր ժառանգ կ'ընդունին, և մինչեւ իսկ այնպիսիները եպիսկոպոսութեան կը բարձրացնեն, և օրինակ կը բերեն Զաքարիայի եղբօր ապօրէն զաւակը, որ հօրեղբօր տեղը եպիսկոպոս ձեռնադրուեցաւ։ Կը պատասխանեն, թէ բազմակնութիւնը օրէնքով արգելուած է, բայց ապօրէն կենակցութիւն ունեցողներ, կամ նենգութեամբ օտար տեղ ալ պսակուողներ կրնան եղած ըլլալ։ Ապօրէն զաւակներու մասին իրենց օրէնքն ալ նոյնն է, իսկ Զաքարիայի եղբօրորդւոյն ապօրէն եղած ըլլալը չեն իմացած, այլ միայն Յովհաննէս կաթողիկոսի հրամանով ձեռնադրուած ըլլալը գիտեն։ Այդ անձերուն ով ըլլալը որոշուած չէ, և կ'երեւի թէ Յովհաննէս Մեծաբարոյ կաթողիկոսի և Արտազի Զաքարիա եպիսկոպոսին կ'ակնարկեն։* 104. *Թէ Հայերը կ'ըսեն, թէ Քրիստոս վերջին դատաստանին ոչ մարդկային այլ աստուածային կերպարանով պիտի երեւի։ Կը պատասխանեն, թէ իրենք մարդկային բնութիւնը ընկղմած և ոչնչացած չեն ըսեր, և դատաստանին օրուան համար բուռածը սուտ և զրպարտութիւն է։* 105. *Թէ Հայերը կ'ըսեն որ դատաստանէն ետքը՝ հոգիները երկ-*

նից արքայութեան և դրախտի և աշխարհի վրայ պիտի բաշխուին, և թէ երկնից մէջ աստուածային տեսութիւն պիտի չունենան։ Կը պատասխանեն, թէ այդ կէտերը 8՚րդ առարկութեան մէջ լուսաբանած են։ 106. Թէ Հայերը կ՚ըսեն որ յարութենէ ետքը այր և կին մարդու սեռական տարբերութիւն պիտի չըլլայ։ Կը պատասխանեն, թէ սեռական տարբերութիւն չեն ուրանար, այլ աւետարանի համեմատ կ՚ըսեն թէ էքբէ-ղհբէչփակ- էցեն։ 107. Թէ Հայերը մահուան ատեն եթէ չեն կրնար հաղորդ առնել, գետնին վրայ խաչ կը գծեն, և անկէ կտոր մը հող բերաննին դնելով հաղորդ կը համարին։ Կը պատասխանեն, թէ պառաւանց խօսքեր պատասխանի իսկ արժանի չեն, և թէ այս տարի իսկ տասը հազար հոգի անհաւատներէ սրով կոտորուեցան, բայց այս տեսակ հաղորդուող մը եղած չէ։ 108. Թէ Հայ մեծամեծներէն ոմանք բաած են, թէ մարգիկներուն հոգիները անասուններուն պէս կ՚ոչնչանան և յարութիւն չեն առներ։ Կը պատասխանեն, թէ Հայոց մէջ անանկ բան լսուած չէ, այլ Արևորդիներ են բողները, որոնք հայերէն կը խօսին, բայց Հայ չեն։ 109. Թէ Հայերու մէջ երբեք յանցաւորներու պատիժ չտրուիր։ Կը պատասխանեն, թէ պատիժներ միշտ տրուած են, ինչպէս քաղաքական նոյնպէս կրօնական յանցանքներու համար։

**1306**. Կը շարունակէ։ 110. Թէ շատ ու շատ մոլորութիւններ ևս կը պարունակուին Հայոց ընդունած և գործածած գիրքերուն մէջ, որոնցմէ 18 հատ անունով կը յիշեն, բայց շատերը աղաւաղուած հնչումներով։ Յիշուած գիրքերն են 1. Տօնապատաղ կամ Տօնօֆոլքէն կամ Տօնապատար, համէջական և յունական եկեղեցիներու դէմ գրուած մը, որ պէտք է ըլլայ Տօնապատճառ։ 2. Անափաթարմաթ, որ է Հաւաթարմաթ, արմատ հաւատոյ բառած։ 3. Յովհաննէս Մանդակունեցի, որ է Մանդակունին։ 4. Յովհաննէս Օձնեցի, որ է Օձնեցի։ 5. Մէսափոտոստրոսէ կամ Մէսակօսսորոս, իբր Մէսքանաբեան կամ Մէսջայնաբեան ֆէլէք բացատրուած, գուցէ Շնորհալիի և Տղայի միաբանութեան թուղթերը։ 6.

ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆ 110

Մէխայէլ գոռբէորք Անոխսոյ, որ է Միխայէլ Ասորի։ 7. Պօղոս Տարօնեցի։ 8. Ոչկէնեցի կամ Ոչտանեցի կամ Տօչտանեցի, նմանաձայնութեամբ ճշդելն ալ դժուար։ 9. Մաթբէօս, որ պէտք է Ուռհայեցին ըլլայ։ 10. Կանոնք առաքելոց, որոնց մէջ կ՚ըսեն, Հայոց մոլորութիւնները կը պարունակուին։ 11. Սարգիս, որ պէտք է ըլլայ Սարգիս Շնորհալին։ 12. Մարտաքէ Վարդաբետէ, աւետարաններու մեկնութիւնը, մեզի անծանօթ։ 13. Վանամ մեկնութիւն Յովհաննու, որ Վանական կամ Վարդան վարդապետ պիտի ըլլայ, թէպէտ Յովհաննու մեկնութիւն գրած ըլլալնին յայտնի չէ։ 14. Իգնատէոս, որ է Իգնատիոս Շնորհալիի Ղուկասի մեկնութիւնը։ 15. Գանազան, որ է Գաւազանագիրք։ 16. Նէկէնոս Պատարաքէն կամ Պատարագէն Մէհֆէնգ, իմա՛ Մեկնութիւն պատարագի՝ Լամբրոնացիի գրածը։ 17. Տէյտորքանտ կամ Տէտորքէր, Գէլէք Խնջայեց թարգմանուած, ճշդելը դժուար։ 18. Այսմաւուրք, որ է Յայսմաւուրք։ Կը փակեն ուրիշ շատ մը գիրքեր ալ յիշելով։ Կը պատասխանեն, թէ յիշուածներէն Տոկատեցի, Մատթէոս և Միսակտուրոս բառածները իրենց անծանօթ անուններ են։ Օձնեցի, Մանդակունեցի, Տարօնեցի, Մարուգէ, և Միքայէլ կոչուածներն ալ իրենցմէ ընդունուած չեն։ Իրենց ընդունածներն են Տօնապաքար, Հանատարմատ, Կանոնք առաքելոց, Սարգիս, Վանամ, Գանազան, Այսմաւուրք և Պատարագին Մէհգէնգ, բայց եթէ ասոնց մէջ ալ երկու բնութեան, բաժակի ջուրին, Ծնունդի տօնին, Քաղկեդոնի ժողովին, կամ ուրիշ կէտերու դէմ բան մը գրուած կայ, որ չեն յիշեր, այն ալ կը մերժեն։ Այդ առարկութեան վրայ շատ բսելիքներ կան, բայց անոնց վրայ երկարել չենք ուզեր, և եթէ միասմի յառաջ բերինք, նպատակնիս պատմական էր, ժամանակին խնդրոյ նիւթ եղող գիրքերուն ցուցակը տուած ըլլալու համար։

**1307**. Կը շարունակէ։ 111. Թէ Հայերը կ՚ըսեն որ Քրիստոս բնական աւելորդներու արտաքսում չունեցաւ, որովհետև այդ ապականութիւնները մեղքի հետևանք են։ Կը պատասխանեն, թէ անանկ կարծիք մը երբեմն մասնաւորներէ, և ոչ Հայ եկեղեցիէ յայտնուած է։ 112. Թէ Հայերը

**ԱՌԱՐԿՈՒԹԻՒՆՔ 111—117**

*կ'ըսեն որ Քրիստոսի թլփատութեան առեն, կտոր չվերցուեցաւ, այլ միայն ճեղքուեցաւ, ինչպէս անդրանիկներու վրայ ընել սովորութիւն էր։ Կը պատասխանեն, թէ այս ալ ոմանց կողմանէ տրուած բացատրութիւն մըն է, և իրենցմէ ընդունուած չէ։* 113. *Թէ Հայերը կ'ըսեն որ Աստուած մարդուն սէրէն յաղթուեցաւ, և Ադամի ըրած սպառնալիքները չճշմարտուեցան, որովհետեւ Ադամ հոգւով չմեռաւ, մարմնով ալ 930 տարի ապրեցաւ, և կենդանիներ մարդուն դէմ չապստամբեցան։ Կը պատասխանեն, թէ և ոչ իսկ լսած են որ Հայոց մէջ ասանկ բաներ ըսող եղած ըլլայ։* 114. *Թէ Հայերը կ'ըսեն, որ Աստուած Կայէնի վրայ նշան դրած ըլլալով, որ մէկը զայն չսպաննէ, ճշմարիտ չկրնար ըլլալ որ Ղամեք զայն սպաննած ըլլայ, այլ նա զահավիժելով ինքզինքը սպաննած է։ Կը պատասխանեն, թէ և ոչ տեղեկութիւն ունին, որ ասանկ բաներ ըսող ապուշ մը գտնուած ըլլայ Հայոց մէջ։* 115. *Առարկութիւնը կը նկատէ եղեր երկու եպիսկոպոսներու խնդրանքով կաթողիկոս մը գահընկէց ընող թագաւորի մը գործը, սակայն յօդուածը կը պակսի, և անուններ յիշուած չեն։* 116. *Թէ Հեթում թագաւորի օրով, ժողով մը եղած է ուր պապական նուիրակին ձեռքով թագաւորը Հռոմի հետ միաբանութիւնը ընդունած է, բայց եպիսկոպոսներ և վարդապետներ և իշխաններ չեն հաւանած, և Վահրամ Սեւալեռնեցի վարդապետ մը պապին դէմ գիրք մը գրած է, ուր պապը Փարաւոն, և մոլորութեանց մէջ ընկղմած կը կոչուի, և նուիրակը ամօթով ետ դարձած կ'ըսուի, և թէ Լատիններ Ծնունդի տօնը և բաժակին ջուրը անիծեալ Արկոմանոսէ առած են, և թէ Հայոց վարդապետներ, եպիսկոպոսներ և քահանաներ այդ գիրքը իբր առաքելական կանոն կ'ընդունին։ Կը պատասխանեն, թէ Մեծ Հեթում թագաւորը պատուով ընդունած է պապական նուիրակը, և զայն Հռոմկլայ յղած Կոստանդին կաթողիկոսին, և նա ալ սիրով ու պատուով մեծարած, և թէ Վահրամ վարդապետը անծանօթ մէկն է, և անոր գիրքը ընդունելի չէ։* 117. *Թէ Հայերը չունին այն ուղիղ հաւատքը և խորհուրդները զորս Հռոմայ եկեղեցին ունի, թէ Հայերուն մէջ թագաւորէն և իշխաններէն զատ շատ քիչեր կան որ Հռոմայ եկեղեցւոյն դաւանութիւնը ունենան, և թէ Հայերը կ'ըսեն որ պապն ու կարտինալներ ամէն օր մազերնուն թելերէն աւելի մարդ կը սպաննեն, թէ զանոնք հերետիկոս կը հռչակեն, անոնց դէմ կը հայհոյեն, և ամէն հոգեւորական պաշտօն սիմոնականութեամբ կը կատարեն։ Կը պատասխանեն, իբրեւ ստախօսութիւն մերժելով Հայերուն վերագրուած խօսքերը։ Իսկ իրենց դաւանութեան ուղղափառութիւնը հաստատելու համար, ամբողջաբար առջեւ կը բերեն Հաւատամք հանգանակը, որուն մէջ և յՈրդւոյ ալ աւելցուցած են, և կը կցեն Իսկ որք ասեն, և Իսկ մեք փառաւորեսցուք հատուածները։ Իսկ խորհուրդներու մասին կը յիշեցնեն 67'րդ առարկութեան տուած պատասխաննին։ Պապերուն դէմ բան մը ըսուած ըլլալուն մասին կ'ըսեն, թէ այն ատենուան կաթողիկոսին ալ հարցուցին, և նա պատասխանեց. Ոչ գիտեմ։ Եւ պարզ ամէն մըն է Մխիթարի և իրեն հետ եղողներուն պատասխանագիրին փակումը՝ առանց վերջաբանի, և առանց վերջնական ընդհանուր դիտողութեան* (ՄՆՍ. ԻԵ. 1270)։

**ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

1308. *Որչափ ալ երկար, ու թերեւս ձանձրալի ալ երեւայ յառաջ բերուած վերլուծութիւնը, մենք կը կարծենք թէ այն մեծ օգտակարութիւն ունի Ունիթորներու կամ հռոմէադաւաններու միտքն ու գործը կշռելու, Հռոմի պապութեան բռնած ընթացքը ճանչնալու, և միանգամայն ժամանակին սովորութիւններուն նկատմամբ ալ ինչինչ տեղեկութիւններ քաղելու։ Մեզի զարմանալի պիտի չերեւար Ներսէս Պաղոնի և Սիմէոն Պէկի պէս կատաղի մոլեռանդներու ամէն տեսակ ծայրայեղութեանց դիմելը և ստութիւններ խօսիլը, այլ առանց զարմանքի և առանց տեսակ մը ցաւի չենք կրնար անցնիլ, տեսնելով որ Հռոմի աթոռը, որ իւր բարձրութեամբ և վեհութեամբ կը սիրէ պարծենալ, կը զիջանի իւրացնել ծանրակշռութիւն չունեցող զրոյցներ, անոնց*

պաշտօնական նշանակութիւն կու տայ և կրկին ու կրկին անոնց մասին բացատրութիւններ կը պահանջէ ։ Մեր այդ դիտողութիւնը իւր հաստատութիւնը կ'ընդունի նոյն իսկ Լատին հեղինակներու կողմէ , որոնք յատկապէս ուսումնասիրելով նշանաւոր 117 մոլորութիւնները , անոնցմէ շատը իբրեւ անհիմն ու ծիծաղական մէկ կողմ կը թողուն ։ Կալանոս Թէադինեան կրօնաւոր հազիւ 30 հատ նկատողութեան արժանի կը գտնէ , Վիլլօթ Յիսուսեան կրօնաւոր միայն 13 , Լըպրիւն Աղօթականաց միաբանութենէն 8 , Լըքիէն Դոմինիկեան կրօնաւոր 6 , և Մանսի Սերվիտեան միաբանութենէն , գրեթէ և ոչ մէկ հատ նկատողութեան արժանի կը գտնէ (ՊՐՕ.837) ։ Եւ ըսել , թէ պապ մը այս տեսակ անհիմն առարկութիւններուն կ'ենթարկէ , քրիստոնէութեան համար հալածուած ու նեղուած , և ամէն տեսակ վտանգներու և վնասներու ենթարկուած ժողովուրդ մը ։ Այս պարագան ուրիշ կերպով չենք կրնար մեկնել , բայց եթէ ըսելով , որ օգնելու կամք ու միտք չունենալով , պապութիւնը կը ջանար այս դարձուածներով իւր չկամութիւնը կամ անկարութիւնը քօղարկել ։ Մեր նպատակին հետեւողութեամբ , պէտք է աւելի Մխիթար կաթողիկոսի և իրեն հետ եղողներուն պատասխանները կշռել , և տուած պատասխաններուն հեղինակութիւնը ճշդել ։ Կանուխէն յայտարարեցինք (§ 1292) թէ կատարեալ ազգային ժողով մը չէ Մխիթարի գումարածը , որ ոչ ընդհանուր հրաւէրով և ամէն բաժիններու ներկայացուցիչներով տեղի ունեցած է , այլ շուրջը գտնուողները հապճեպ հաւաքելով կատարուած խորհրդակցութիւն մըն է ։ Նմանապէս ազատ կերպով կանոններ հաստատող ժողով մը չէ , այլ բարոյական ճնշման ներքեւ արտաքին օգնութիւններ ընդունելու համար՝ պապին կողմէն կրկին և կրկին բռնադատութեամբ պահանջուած պայմանին գլուխ ծռած ըլլալու համար կատարուած գործ մըն է , որ երբեք ոյժ և հեղինակութիւն չպարունակեր ։ Շատ առարկութիւններու հանդէպ տրուած պատասխաններն իսկ բաւական են հաստատել Հայ եկեղեցւոյ ընդհանուր ուղղութիւնը ։ Երբ կ'ըսեն թէ առաջ տարբեր էր , կամ թէ Մեծ Հայոց մէջ տարբեր է , կամ թէ իրենք Հռոմի պահանջին կը համակերպին , կամ թէ այժմ այլեւս այնպէս չեն ըներ , կամ թէ պատրաստ են Հռոմի հրահանգները գործադրել . նովին իսկ կը հաստատեն թէ Հայ եկեղեցին իրեն յատուկ դաւանութիւնն ու կանոններն ունէր , և նոյները իւր ընդհանրութեան մէջ կը պահէր , որով հռոմէադաւան Լատին թագաւորի մը հրամանով և բռնադատեալ պարագաներու ներքեւ՝ կաթողիկոսի մը քանի մը եպիսկոպոսներու հետ տուած հաւանութիւնը , ոչ Հայ եկեղեցւոյ իսկութիւնը կը փոխէ , և ոչ Հայ հաւատացելոց ընդհանուր հաւատքը կ'այլայլէ ։ Լատին պատմիչն ալ կը վկայէ , թէ թագաւորն էր որ կը յորդորէր Հայերը , [illegible], և կը ցուցնէր [illegible], և իբրեւ փաստ կ'աւելցընէր , թէ [illegible] (ԴԱՐ.41) ։ Նոյն իսկ հակառակորդներն են , որ կը վկայեն թէ Լատին թագաւորէն և իրեն կամակատար ու ազգակից քանի մը իշխաններէն զատ , ճշմարիտ հռոմէադաւաններ չկային Հայոց մէջ (§ 1307) , և հակառակորդներու տուած այդ նպաստաւոր վկայութիւնը մեծ նշանակութիւն ունի ճշմարտութիւնը հաստատելու համար ։

**ԳՈՒԻՏՈՆ ԵՒ ՋԻՒԱՆ**

**1309 .** Մխիթարի զիջողութիւնները նշանակութիւն մը ունեցած կ'ըլլային , եթէ գոնէ յաջողէր Լատիններուն վստահութիւնը գրաւելով Կիլիկիոյ թագաւորութիւնը վերահաս վըտանգէ ազատել , և զօրաւոր և արդիւնաւոր օգնութիւններ ստանալ Արեւմուտքէն ։ Սակայն այդ ալ չճշմարտուեցաւ ։ Զամչեան գրած է , թէ ընդհակառակն մեծամեծ շփոթութիւններ տեղի ունեցած են Հայոց մէջ . և մինչեւ իսկ Ջիւան-Կոստանդին սպանուած է իւր լատինամոլ բռնադատութիւններուն համար , միայն տարի մը թագաւորելէ ետքը , այսինքն 1343'ին (ՉԱՄ. Գ. 348) ։ Սակայն Դարդէլ 1344 օգոստոս 17'ին կը դնէ Ջիւանի մահը , խաղաղական վախճանով . և գունդստապլի ատեանով (ԴԱՐ. 50) , ուս-

*կից հետեւցուցած են նորեր, թէ Ջիւան, ոչ իբր Թագաւոր, այլ իբրեւ Թագապահ կամ տեղակալ վարեց իշխանութիւնը* (ՍԻՍ. 559)։ *Սակայն մենք տեսանք որ Սիսի ժողովական գրութեան մէջ, ժամանակին իշխող Ջիւանը՝ Կոստանդին անունով, և շնորհիւ և ընտրութեամբ Աստուծոյ Թագաւոր Ամենայն Հայոց կոչումով յիշուած է* (ՄՆՍ. ԻՆ. 1186)։ *Ուստի պէտք է ըսենք թէ Գուիտոնի հրաժարելուն և Սիս չգալուն վրայ, Ջիւան իսկապէս Թագաւորի անունն ու պաշտօնը ստանձնած է, բայց երբ Յովհաննէս Ե Պալէոլոգ, Անդրոնիկոս Գ'ի որդին և Ռիթա Մարիամ կայսրուհւոյ՝ այսինքն Գուիտոնի մօրաքրոջ թոռը, կայսր եղաւ, գժտութիւն ինկաւ Յովհաննէսի և Գուիտոնի մէջ, որ պարտաւորուեցաւ Աքայիոյ կուսակալութենէն քաշուիլ* (ՋԱՄ. Դ. 347) *և Կիլիկիա դառնալ, և այդ կերպով Թագաւորութիւնը ստանձնեց։ Ջիւանի յօժարակամ տեղի տալը կ'իմնայ, վերոյիշեալ* 1343 *տարւոյ սկիզբը, և բստ այսմ ոչ եւս սպանութեամբ, այլ կամաւոր հրաժարմամբ դադրած կ'ըլլայ Ջիւան-Կոստանդինի Թագաւորութիւնը, Սսոյ ժողովէն քիչ ետքը։ Արդէն՝* 1343 *մարտ* 8 *թուականով Գուիտոն իբր Հայոց Թագաւոր՝ Անգղիոյ Եդուարդ Գ Թագաւորին դեսպան կը յղէ, ինչպէս յիշատակուած է պատմութեանց մէջ* (ՍԻՍ. 559)։ *Ջիւան այլեւս ուրիշ դեր վարած չէ պատմական եղելութեանց մէջ, բայց եթէ աջակից և գործակից եղած է իւր եղբօր Գուիտոնի անոր քաղաքական ձեռնարկներուն և կրօնական մոլեռանդութիւններուն մէջ, և միայն քանի մի օրերու կանխահաս մահուամբ ազատած է այն եղերական սպանութենէն, որով մեռան իւր եղբայրները Գուիտոն Թագաւոր և Պէմունդ Կոռիկոսի կոմսը,* 1344 *նոյեմբեր* 17*'ին* (ԴԱՐ. 49)։ *Ջիւան երկու զաւակ թողուց, Պէմունդ* 5 *տարեկան, և Լեւոն* 2 *տարեկան* (ԴԱՐ. 52), *որ չփոթութեամբ կամ թէ կրկին անուն ունեցած ըլլալուն՝ Գուիտոն ալ կոչուած է* (ԴԱՐ. 61), *և եղած է Կիլիկիոյ Թագաւորութեան վերջին Լեւոնը։*

**1310.** *Մխիթարի ժողովին վերջանալը և Գուիտոնի Թագաւորելը, իրարու գրեթէ կից գործեր են, և Գուիտոնի օրով Կղեմէս Զ պապին ձեռքը հասան Սիսի մէջ խմբագրուած ընդարձակ բացատրութիւնները, և պահ մը գոհունակութիւն ազդեցին անոր, գլխաւորապէս յայտնուած պատրաստակամութեան, քան թէ պատասխաններուն պարունակութեան համար։ Սակայն Պապն չաբունակեց իւր բծախնդիր պրպտումները, և պատասխանները մեկնաբանելով նեքքին իմաստներ քաղել, Հայերուն վրայ կասկածներ բարդելով, ինչ որ դժուար պիտի չըլլար, քանի որ Մխիթար Ունիթորներու նորաձեւութեանց համակերպող չէր, և մինչեւ աստիճան մը Հայոց եկեղեցւոյ ինքնութիւնը պաշտպանող էր։ Պապին ալ շատ դիւր կու գային այդ դարձուածները, քանի որ կերպով մը օգնութիւնները զլանալու իբր պատճառանք կը ծառայէին։ Գուիտոն Թագաւոր և Մխիթար կաթողիկոս պապը հանդարտելու և օգնութեան յորդորելու համար նոր դեսպանութիւն մը յղեցին Աւինիոն, զոր կը կազմէին Յովհաննէս Կրակեցի եպիսկոպոս, և քանիցս գացող եկող Դանիէլ Մինոր, այսինքն է Փրանկիսկեան կրօնաւոր, և երկու ասպետներ։ Ասպետներ պապին յանձնարարականով գացին ներկայանալ Փիլիպպոս Զ Թագաւորին՝ օգնականութեան յորդորելու համար, մինչ եկեղեցականները մնացին պապին մօտ, որ կարգեաց եպիսկոպոսունս երկուս հրամանաւ զնոսա է կաթողիկեայ հաւատս, և ցուցանել թէ յիմ էին էր միաբանութեան նոցա* (ԴԱՐ. 42)։ *Եղածը* 117 *կարծեցեալ մոլորութեանց մասին տրուած բացատրութեանց վերաքննութիւնն էր, և թերեւս նոյնինքն Պաղոնն էր նշանակուած եպիսկոպոսներէն մէկը։ Երբոր այդ ձգձգումները տեղի կ'ունենային Աւինիոնի մէջ, անդին Գուիտոն եւս քան զեւս կը սաստկացնէր իւր մոլեռանդութիւնը, ոչ միայն արքունիքը կատարեալ լատինականութեան վերածելով, այլեւ Հայերը ստիպելով կատարելապէս լատինական դաւանութիւն և սովորութիւն, ծէս և ձեւ ընդունելու, յետադասելով և հեռացնելով այն Հայերը, որ լատինակերպ չէին գործեր, և բուն Լատինները յառաջացնելով պաշտօններու և գործերու մէջ։ Հայեր անտարբեր աչքով*

**ԳՈՒԻՏՈՆԻ ԸՆԹԱՑՔԸ**

չէին կրնար նկատել այդ ընթացքը, և տուկայ Լատինի մը մոլեռանդ և մոլեգին իշխանութեան։ Անշուշտ ատգոհութեան նշաններ, դանդատանաց յայտարարութիւններ, և սպառնալից պահանջումներ կանխեցին, որ վերջապէս սպանութեան ծայրայեղ միջոցին դիմեցին, և 1344 նոյեմբեր 17'ին Ատանայի մէջ ժողովեցան քաղաքացիքն մեծաւ, և վառեալ ի զէն գրոհ եկեան, և սպաննեցին Գուիտոն թագաւորը, Պէմունդ եղբայրը, և քաղաքացիքն մեծ որանց զօտեւորալք, զոր բերեալ էր արքայն ի կողմանցն Արեւմտից, որ է ըսել արքունիքին և բանակին մէջ պաշտօններու անցած Լատինները (ԴԱՐ. 49), որոց թիւը մինչև երեք հարիւր կը հաշուուի (ԴԱՐ. 73)։ Ասոնց հետ սպաննեցին նաև զամ ֆռանգաց զրանկրէց արքային՝ մինչ մօտաւ ցանէր զլաորոգն (ԴԱՐ. 49), անշուշտ լատինածէս նորաձևութիւնով պատարագելուն համար։ Պարագաները կը ցուցնեն, թէ իշխաններէն ոմանց դաւադրութեան գործ չէր եղածը, այլ համախումբ ազգովին շարժումի մը հետևանք, և արդիւնք լատինականութեան դէմ զգացուած հակառակութեան, ինչ որ չնպաստեր Կիլիկիոյ Հայոց հռոմէականութեան հնազանդած լինելուն կարծիքին, զոր կը սիրեն փայփայել հռոմէադաւանները, կաթողիկոսական գրութեանց հաճոյակատար և արտաքնայարդար բացատրութեանց յենլով։

1311. Թագաւորական գահին յաջորդութեան համար արքունի գերդաստանին ճիւղը սպառած էր (§ 1290), Լուսինեանց տոհմէն ալ յարմար ժառանգ չէր մնացած, քանի որ Ջիւան ալ երեք ամիս առաջ մեռած էր։

ՆՈՐ ՊԱՐԱԳԱՆԵՐ

Գուիտոնէ միայն երկու աղջիկներ և Ջիւանէ երկու անօրինական զաւակներ մնացեր էին (§ 1309), որք չէին կրնար կացութեան տէր կանգնիլ, չնայելով ալ որ Լուսինեանց դէմ էր ազգային զայրոյթը։ Ուստի հարկ եղաւ բոլորովին նոր սերունդէ մէկ մը թագաւոր հռչակել շարժումի գլուխներուն ընտրութեամբ, և այս եղաւ Կոստանդին, որդի Բաղդուինոս մարաջախտի, Նղրեցոց ազգատոհմէն, որ ըստ ոմանց յոչէ Լեւոնի ծննդեան էր (ՉԱՄ. Գ. 349), բայց ժամանակակից լատին պատմիչը կ'ըսէ թէ Օշին թագաւորի խնամակալ նշանակուած Բաղդուինոսի որդին էր (ԴԱՐ. 28), և թէ էր քանաւոր, և ոչ ծնեալ յարքայական ազգէ (ԴԱՐ. 44)։ Արքայազարմ ըսողները թերևս հիմնուած ըլլան Բաղդուինոսի մարաջախտին, և Օշին խնամակալին եղբայրներ կարծուելուն վրայ, որով Կոստանդին Լեւոնի մօրեղբօրորդի եղած կ'ըլլայ։ Կոստանդինի ազգակցութիւնը կը հետևի անոր ամուսնութենէն ալ, քանի որ իր կինն էր Մարիամ, դուստր Օշին խնամակալին և Յովհաննայի՝ Օշինի այրի թագուհիին, իսկ Օշին խնամակալ Լեւոնի մօրեղբայրն էր։ Շատ հաւանական է Կոստանդինը շարժումին գլուխ եղած ըսել, և այնպէս թագաւորութեան բարձրացած, որ նախապէս հռչակուած է Տարսոնի մէջ, ուր իր անունով դրամ ալ հատած է Կոստանդին, և անկէ ետքը Սիսի տիրացած (ՍԻՍ. 380)։ Գուիտոնի սպանութիւնը նոր պատճառանք մը եղաւ Կղեմէս Զ պապին ձեռք, խոստումները չգործադրելու համար, և ոչ կամեցան տանել մեծ ինչ շնորհս և նուաստաւորութեան, և հարցին(?) ... զծանդակութեան Լուսաւորչոց և իշխանաց փրկութենէց (ԴԱՐ. 43)։ Լուսինեանց սպանութիւնը յայտնի դժկամակութեան նշանակ էր լատինասիրութեան և հռոմէադաւանութեան դէմ, ուստի պապը նորէն գլխաւոր նպատակին դառնալով, վերջէն եկող պատգամաւորները կը յանդիմանէր (§ 1310), և զանոնք ձեռնունայն ետ կը դարձնէր, իր կողմանէ երկու նուիրակներ ալ ընկերացընելով անոնց, որպէսզի փշեսցեն զհաւատս Հայոց և քարոզեսցեն զՀռոմէական հաւատս, իբրզի բոլոր հպատակութեան ի հաւատսն ազգաւորե և ընդունել զհաւատս որքոյ եկեղեցւոյն Հռոմայ՝ պիտի տրուէին սպասուած օգնութիւնները և նպաստները (ԴԱՐ. 44)։ Պապէն յղուած եպիսկոպոսներն էին, Անտոն Կայետայոյ (Gaeta), և Յովհաննէս Կորոնիոյ (Coron), որոց առաքման թուական ցուցուած է 1346 օգոստոս 31 (ՍԻՍ. 559) որով իբր երկու տարի անցած կ'ըլլայ Գուիտոնի սպանութենէն։ Սակայն կը ցուցնէ թէ բաւական քննութիւնք և բանակցութիւնք կատարուած են, մինչև այդ որոշումը, զոր ձեռք ձգած են Հայ պատգամաւորները չառա

մը խանդաղատանքի յայտարարութիւններով (ԴԱՐ. 43).

**ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԽՈՍՏՈՒՄ**

1312. Կոստանդին Բաղդինեան, որ լատինամոլութեան դէմ չարժումին հետեւանքով գահ բարձրացած էր, թագաւորելէն ետքը պէտք զգաց ինքն ալ Լատիններուն բարեացակամութիւնը վաստկիլ՝ հաճոյակատար ձեւերով և հպատակութեան վկայութիւններով, միջասահման ընթացքով մը հայադաւան դրութեան և մոլեռանդ լատինականութեան միջեւ, Հայ եկեղեցւոյն ծէսն ու ձեւը պահելով, դաւանական և կանոնական զիջողութիւններ յանձն առնելով։ Նոյն էր Մխիթար կաթողիկոսի ընթացքն ալ, քանի որ երկրին և թագաւորութեան կացութիւնն ալ այնպիսի ձեւ մը առած էր, որ այլեւս զայն փոփոխել անհնար էր։ Լատինաց հետ յարաբերութիւններ տիրապետած էին, և դրացի Արեւմտեան պետութիւններն ալ Կիլիկիան այլեւս իրենցմէ սատարուած և Արեւմուտքի կապուած կը նկատէին։ Կայետերոյ և Կոլոնիոյ եպիսկոպոսները ամիս մի մնացին Կիլիկիա, որ է ըսել մինչեւ 1347 ամառուան սկիզբը, և այդ միջոցին հրահանգեցին զԲաւորն, զկաթողիկոսն, զեպիսկոպոսունս, զիշխանս և զթագաւորն Հայոց, ի հաւատս ճշմարիտս, ըստ Լատին պատմիչին, իմա՛ ի համեմատութիւն, և այդ մասին անոնցմէ գիր ուխտի և երդմանց ուզեցին, և պահանջեցին զայն գրել մատենաւ խորհրդոց, և ստորագրել խոստանց իւր ձեռամբ (ԴԱՐ. 45)։ Պէտք է դիտել սակայն, թէ այս քանի անգամներ են, որ այսպիսի յայտարարութիւններ կը պահանջուին և կը տրուին, և վստահութիւն ազդելու չեն բաւեր, վասն զի երկու կողմերն ալ արտաքին ձեւակերպութիւններ ըլլալը կը զգան։ Ասիկայ կը հաստատէ թէ Հայ եկեղեցին հիմնապէս համեմատականութեան անցած չէր և չանցաւ, ինչ ալ ըլլայ երկու կողմերուն գիրար խաբելու մէջ անպատեհ մրցում մը։ Ըստ այսմ Կղեմէս պապ ալ բաւականանալ ցուցուց այն յայտարարութեամբ, զոր երկու եպիսկոպոսները Կիլիկիայէ բերին, իրենց հետ ունենալով Կոստանդինի արքունիքէն Կոստանդին Կարսիլլի անուն ասպետ մը (ԴԱՐ. 47)։ Պապը 1347 սեպտեմբերի 27'ին խոստացաւ տարեկան 12,000 ոսկի և 1000 ձիաւոր յղել Հայերուն, բայց միշտ յետ ժամանակեան պայմանով (ՍԻՍ. 559), որով Հայերուն յայտարարութեանցը սակաւին չգործադրուած ըլլալը կը հաստատուի։ Պապին խոստումներն ալ նոյն տեսակէն էին, զի ձիաւորներ դեռ պիտի հաւաքուէին։ Իսկ ոսկիներու վճարումն ալ Կիպրոսի թագաւորին կը յանձնարարուէր, որ Արեւելքի Լատիններէն հաւաքուելիք պապական իրաւունքներէն վճարէ նշանակուած գումարը։ Այդ նպատակով Ներսէս Պաղոն և Կոստանդին Կարսիլլի Կիպրոս կը ղրկուէին, այլ ներքին վէճերով գործը կը վիժէր (ԴԱՐ. 48), և կացութիւնը կը շարունակէր իւր տարտամ և անկայուն վիճակի մէջ։

**ԼԵՒՈՆ ՋԻՒԱՆԵԱՆ**

1313. Վերջին Լեւոնի խոստովանահայրն ու ներբողաբան պատմագիրը Յովհաննէս Դարդէլ, շատ մը հրաշապատում պարագաներ կը հիւսէ անոր առաջին կեանքին շուրջը, այլ չենք կրնար հաստատել թէ որ աստիճան ստուգութեամբ, զի ընտանեկան դրդդներու հաւաքածոյի կերպարանը կը ներկայեն։ Դարդէլի պատմելով, Կոստանդին Բաղդինեան, իւր թագաւորութիւնը ապահովելու համար Ջիւանի այրին Սուլթան տիկինը, և երկու մանուկները՝ Պէմունդն ու Լեւոնը, դրած է Կոռիկոսի բերդին մէջ (ԴԱՐ. 53), և մեռցնելու համար ալ թոյնով խառնուած մեղր ղրկած, բայց Սուլթան կասկածելով մեղրը աղքատ կնկան մը կը կերցնէ, որ կը մեռնի, և իրենք կ'ազատին (ԴԱՐ. 54)։ Անկէ ետքը երկու ասպետ կը ղրկէ որ ծովին մէջ խեղդեն, բայց Սուլթան Կիպրացի նաւակ մը գտնելով, Կոռիկոսի բերդէն կը փախչի, և նորէն կ'ազատին (ԴԱՐ. 55)։ Կիպրոսի մէջ ցամաք կ'ելլեն Կարպասի խորշը, այլ Կիպրոսի թագաւոր Հուգոն Դ անոնց լաւ ընդունելութիւն չըներ, վասն զի Ամաուրիի որդիները իրեն դէմ դատ բացած էին իրենց հօրը կալուածները պահանջելու, և Կարպասի մէջ կը թողու համեստ ծախքով մը ապրելու։ Սուլթան կ'իմանայ թէ Կոստանդին զիրենք անկէ ալ յափշտակել պիտի տայ, ուստի ծո-

*վեղերքը կը թողու երեք տարի այնտեղ ապրելէ ետքը, և Ս. Սիմէոնի դղեակը կը փոխադրուի, ու նորէն կ'ազատին* (ԴԱՐ. 56)։ *Այնտեղ ալ հրաշքով ականակիտ ջուրի աղբիւր մը կը բղխի, և Հուգոն ուխտի գալուն, իւր հօրեղբօր թոռներուն վրայ կը կարեկցի, և մօրերնուն հետ իրենց արքունիքը կը փոխադրէ, և այսպէս այս անգամ ալ խեղճ կեանքէ կ'ազատին* (ԴԱՐ. 57)։ *Լուսինեանց վերջին չառաւիղները կ'ապրին Կիպրոսի արքունիքին մէջ, մինչև Հուգոն Դ'ի մահը* 1361'*ին, և միևնոյն պաշտպանութիւնը կը վայելեն անոր յաջորդէն Պետրոս Ա'է, որ հօրը հիւրասիրութիւնը կը շարունակէ։ Պեմունդ և Լեւոն հետզհետէ կը զարգանան զինուորական կրթութեանց մէջ, մինչև որ չափահաս ըլլալնէն ետքը Հայոց թագաւորական գահը ձեռք ձգելու ձեռնարկեցին, իբրև Գուիտոնի եղբօրորդիներ և օրինաւոր յաջորդներ, իրենց մեծ մօրը Զապլունի ճիւղով Կոռիկոսեանց կամ Պապեռոնեանց ժառանգներ նկատուելով։*

**1314.** *Երբոր մէկ կողմէն Լատիններու հոգևոր պետը կրօնական պայմաններով, և տրուած բացատրութիւններէ չգոհանալով խոստացուած օգնութիւնները կը զլանար, և Հայեր ատերևոյթ գոհացումներով զայն հաճել կ'աշխատէին, Կիլիկիոյ թագաւորութիւնը հետզհետէ իւր քայքայման կը դիմէր։ Գարամանցիք հիւսիսէ Պապեռոնը կը գրաւէին, Եգիպտացիք հարաւէն Այասը կը տիրանային, և Կոստանդին թագաւորի ու Լիպարիտ զօրավարի մասնակի յաջողութիւնները՝ կացութիւնը բարելաւելու չէին բաւեր։ Իսկ Կղեմէս պապ միշտ նոյն յանդերգը կը կրկնէր* 1348*ին գրած նամակներուն մէջ, թէ զինուոր և գանձուոր պիտի ունէ, երբ վստահութիւն ստանայ թէ Հայք խաղաղ մաքրեալ էին յորդորոյ մոլորութեանց* (ԶԱՄ. Գ. 351)։ *Իսկ ընդհակառակն այդ վստահութիւնը անկէ կը նուազէր, զի Կիլիկիա գտնուող Լատին կրօնաւորներ և լատինամոլ Հայեր կը շարունակէին տեղեկագրել, թէ Հայերուն կրօնական ընթացքին մէջ փոփոխութիւն չէ եղած, և յղուած յայտարարութիւններ միայն տառեր, և կեղծեալ խոստումներ են։ Պատմուած հանգամանքներէն եթէ իսկական հետևութիւն մը ուզենք քաղել, պէտք է ընդունիլ, թէ իրաւ Հայոց խօսքերը ու գործերը իրարու համաձայն չէին, հռոմէականութեան հաւանութիւններն բերանացի էր, արտաքին օգնութեան համար բռնադատեալ պայմանը կատարած երևնալու համար, այլ ընդհանուր եկեղեցին և ժողովուրդը, ինչ որ էր նոյն կը մնար, հայդաւան մը իւր բնիկ վարդապետութեամբ և արարողութեամբ։ Պապն ալ այդ պարագայէն կ'օգտուէր խոստումները չկատարելու, և ինչպէս առաջ, նոր ստացած յայտարարութիւններուն ալ նշանակութիւն չի տալով, և* 1351'*ին դարձեալ նոր բացատրութիւններ կը պահանջէր Մխիթարէ* (ՍԻՍ. 559)։ *Իսկ Մխիթար չարունակ նոյն բաները կրկնելէ ձանձրացած, պապին գիտել կու տար, թէ պէտք չէ որ ամէն հանդիպած լրատուներու ականջ կախէ, այլ իւր գրութեանց հաւատք ընծայէ, և փութայ ինչ որ խոստացած էր՝ գործով ալ կատարել* (ԶԱՄ. Գ. 352)։ *Ասոր վրայ Կղեմէս կը պահանջէ վերջնական և վաւերական յայտարարութիւն մըն ալ ստանալ, և Արևելքի լատին եպիսկոպոսներուն կը յանձնարարէ՝ տեղւոյն վրայ քննութիւն կատարել և իրեն տեղեկագրել, այլ անոնք ալ խոյս կու տան, ձեռնհաս և վստահելի թարգմաններ չունենալնուն պատճառանքով* (ԶԱՄ. Գ. 352), *և գործը կ'երկարաձգուի, մինչև որ* 1353'*ին Ներսէս Պաղոնի Արևելք դառնալուն առթիւ, պապը անոր կը յանձնարարէ թարգմանի և քննիչի պաշտօնները կատարել* (ՍԻՍ. 560)։ *Որոշակի չունինք թէ ինչ եղաւ Պաղոնի գործունէութիւնը, և ինչ արդիւնք արտադրեց անոր միջամտութիւնը, սակայն վստահաբար կրնանք ըսել թէ բարի և օգտակար պտուղ մը հնար չէր ակնկալել այնպիսի անձի մը գործէն, որ մոլեռանդ և մոլեգին կիրքերու մատնուած հոգի մը ունէր, և ուղղութեան ու շինութեան հետևելու նպատակէն շատ հեռու էր։ Իբրև Պաղոնի պաշտօնը հակակշռող ձեռնարկ մը, Զամչեան այդ միջոցին, այսինքն* 1354 *թուին, կը նշանակէ հրաժարեալ կաթողիկոս Յակոբ Անաւարզեցիի իբր պատգամաւոր Աւինիոն երթալը, պապը հաճեցնելը, և*

*Հռոմի ուխտն ալ կատարելով Կիլիկիա դառնալը* (ՉԱՄ. Գ. 353)։ *Այդ եղելութեան իբր աղբիւր կը յիշէ Մխիթար Ապարանցին, Ունիթոր պատմագիրը, զոր մենք ձեռուընիս չունինք ստուգելու համար, այլ կ՚երեւի թէ Չամչեան թիւրիմացութեամբ գրած է այդ կէտը, քանի որ Ալիշան իւր Նորագոյն հետազօտութեանց համեմատ բոլորովին կը լռէ, և անուղղակի հերքած կ՚ըլլայ Ցակոբի պատգամաւորութեան պատմութիւնը։ Հաւանական ալ չերեւիր որ Նախկին կաթողիկոս մը յանձն առնու այսպիսի պաշտօն մը կատարել, թող որ Ցակոբի անձն ալ պապին առջեւ հաճելի չէր, որ կարենար Նպաստաւոր ընդունելութիւն գտնել և տպաւորութիւն Ներգործել։ Արդէն* 117 *կարծեցեալ մոլորութեանց կարգին ալ տեսանք, որ քանի քանի ամբաստանութիւններ ուղղակի Ցակոբի անձը կը դիտէին, և զայն իբր գլխաւոր ընդդիմադիր կը ցուցնէին* (§ 1307)։ *Այդ պարագաները կշռելով երբեք հաւանական չենք գտներ Ցակոբի պատգամաւորութիւնը, և ըստ այսմ պարզ թիւրիմացութեան հետեւանք կը կարծենք Չամչեանէ պատմուած պատուիրակութիւնը։*

**ՄԽԻԹԱՐԻ ՄԱՀԸ**

1315. *Թագաւորութեան վտանգեալ և եկեղեցւոյն տատամսեալ վիճակին մէջ կը հանդիպի Մխիթարի մահը,* 1355*'ին,* 14 *տարի հայրապետական աթոռը վարելէն ետքը։ Ծանր և մեծամեծ տագնապներու ենթարկուած, և գրեթէ ապարդիւն մնացած պաշտօնավարութիւն մը ունեցաւ Մխիթար, աւելի արգահատելի, քան թէ քննադատելի իւր գործունէութեան և ուղղութեան մէջ։ Հնար չէ Մխիթարը լատինամոլութեամբ ղաւաձեալ և հռոմէականութեան աշակերտեալ կարծել, որչափ ալ ամէն կերպերով ջանացած երեւայ պապերուն հաւատացնել թէ հնազանդ և համամիտ է Լատին եկեղեցւոյ վարդապետութեանց և սովորութեանց։ Ժամանակակից ցուցակագիր մը, կաթողիկոսներու շարքը կազմած ատեն կը գրէ.* Տէր Յակոբ Հռոմեցւոց պատրիարքին, Տէր Միխիթար ուղղափառ պատրիարքին (ՏԱՇ. 989), *ուր ուղղափառ կոչումը Հռոմեցի կոչումին դիմաբաժան դնելովը կը ցուցնէ, թէ այդ կոչումը հայադաւանի և ոչ հռոմէադաւանի իմաստով կը գործածէ և մեր տեսութիւնը կը հաստատէ։ Մխիթարի միտքը բացատրելու համար պէտք է յիշել, որ ահագին և վերահաս վտանգ մը կը սպառնար Կիլիկիոյ թագաւորութիւնը հիմնովին վտանգեալ էր, միակ յուսոյ նշոյլ մը Լատիններէն կ՚ըսպասուէր, անոնց կողմանէ ալ հռոմէադաւանութիւնը իբր բռնադատեալ պայման կը դրուէր, ուստի համակերպութիւնը անհրաժեշտ կը դառնար, գոնէ այն չափին մէջ որչափ որ պէտք էր դիմացինը գոհացնելու համար։ Հոս կանգ կ՚առնէր Մխիթարի համակերպութիւնը, իսկ միւս կողմէն իւր բոլոր ոյժերով կ՚ընդդիմանար հռոմէականութեան անձնանուէր քարոզիչ և հայադաւանութեան ոխերիմ թշնամի, և իրենց եկեղեցւոյն ուխտեալ քանդիչ եղող Ունիթորներուն. և Նոյնիսկ հռոմէադաւանութեան պետին առջեւ կը պարզէր անոնց մոլար ու վնասակար արարքները։ Եթէ երբեք ոմանց կողմէն դատապարտելի կամ պարսաւելի դատուի Մխիթարի այդ ընթացքը, մենք պիտի ըսենք թէ վտանգը ու տկարութիւնը այնպիսի բուռն և գերագոյն պարագաներ են, որ ոչ միայն կը Նուազեն, այլ և խափանեն կը ջնջեն պատասխանատուութիւնը։ Ամէն առթի մէջ եթէ կեղծիքը արդարանալի բան մը չէ տկարին համար, աւելի անարդարանալի է զօրաւորին համար, որ տկարը խաբելով զայն իւր կորուստին կ՚առաջնորդէ։ Պապերուն կողմէ շարունակ խոստուած և երբե՛ք չգործադրուած խոստումները, շարունակ պահանջուած և առնուած, և առժամեայ գոհունակութենէ ետքը Նոր բծախնդրութեամբ եղծուած յայտարարութիւնները, և հետզհետէ բարդուելով մինչեւ* 117 *հասած անհիմն ամբաստանութիւնները, շատ աւելի կը ծանրանան Հռոմի պապերուն, քան թէ Մխիթարի և անոր Նման կաթողիկոսներուն վրայ։ Շատ աւելի աղէկ կ՚ըլլար, եթէ միանգամընդմիշտ և վերջնականապէս մերժէին օգնել իրենց դաւանութեան չհամակերպող Հայերուն, որ երթային և իրենց գիտցած կերպով իրենց գործը վարէին, և իրենց վտանգին դարմանը հոգային, քան թէ շարունակ սուտ յուսադրութիւններով, խաբէական*

խոստումներով, կեղծեալ բարեմտութիւններով և արուեստակեալ պայմաններով խաղցնէին, և քայլ առ քայլ քայքայման մղէին: Գոնէ իրենց պատասխանատուութիւնը ազատած կ'ըլլային, և պատմութիւնը իրաւունք չէր ունենար Լատինական միջամտութեանց վերագրել Հայ իշխանութեանց վերջնական անկումը:

## Տ. ՅԱԿՈԲ Բ. ԱՆԱՒԱՐԶԵՑԻ, ԴԱՐՁԵԱԼ

**ՆՈՐԷՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ**

1316. Հայ եկեղեցւոյ հայրապետներուն շարքին մէջ անօրինակ և միակ է Յակոբի պարագան, որ կանոնական և վերջնական կերպով աթոռէ հրաժարելէն, և ուրիշ մը օրինաւորապէս կաթողիկոսութիւնը վարելէն ետքը, երկրորդ ընտրութեամբ կրկին հայրապետական աթոռ կը բարձրանայ և կաթողիկոս կը հռչակուի: Ասիկայ յայտնի նշան մըն է թէ Յակոբ անուանարկութեամբ և իրական մեղադրութեամբ կաթողիկոսութենէ չվտարուեցաւ, այլ յօժարական քաշուեցաւ (§ 1283), իր պատուովը ապրեցաւ, և սկսաւ նորէն փնտռուիլ, երբոր Լատինաց մերձաւորութեան՝ ոչ միայն անպտուղ, այլ և վտանգաւոր ըլլալուն չատեր սկսան համոզուիլ: Յակոբի կրկին կաթողիկոսանալուն մասին տեղեկատու պատմութիւն չունինք, որ գիտնանք թէ կրկին օծում կատարեցի՞ն, կամ թէ ի՞նչ ձեւով աթոռ բարձրացուցին. սակայն հաւանական չէ կրկին օծելնին, վասն զի մեր եկեղեցին երբեք օծում չկրկներ, և իբր ստոյգ կը նկատենք որ արդէն կաթողիկոս օծուած ըլլալով առանց նոր արարողութեան գործի գլուխ անցաւ: Յակոբի կրկին կաթողիկոսանալուն առաջին աղբիւր կը գտնենք Դավրիժեցին, որ կը գրէ թէ Մխիթարէ ետքը Նոքա թողեալ ամս չորս (ԴԱՎ. 335), և անոր հետեւելով կը կրկնէ Երեւանեցին ալ (ՋԱՄ. 17): Սակայն հնագոյններ կարծես թէ կ'անգիտանան այդ կրկնակ պաշտօնավարութիւնը, զի Անեցիին շարունակողը, Հայոց 789'ին կը դնէ, «Տէր Մխիթար ամս չորեքտասան» (ՍԱՄ. 168). ճիշդ 803'ին ալ կը դնէ «Տէր Մեսրոպ ամս տասնեւմէկ» (ՍԱՄ. 169), որով Յակոբի համար միջոց չմնար: Նոյնպէս ուրիշ յիշատակարան մըն ալ առանց ընդմիջութեան կը շարէ «Տէր Յակոբ, Տէր Մխիթար, Տէր Մեսրոպ» (ՏԱՇ. 989), որով անգիտակ կ'երեւի Յակոբի երկրորդ կաթողիկոսութեան: Թերեւս մենք ալ միտէինք այդ կրկնութիւնը չընդունիլ, եթէ զօրաւորագոյն ըլլային փաստերը, սակայն Անեցիին շարունակողը մեծ հեղինակութիւն չվայելեր իր չփոթ տեղեկութիւններովը, և յիշատակարանը անորոշ է թուականներ չունենալուն համար, մինչ Դավրիժեցին աղբիւրներու դիմելով կազմած է իր ցուցակը, յիշատակարաններ և կոնդակներ ալ քննած է (ԴԱՎ. 334), և աւելի վստահութեան արժանի կը նկատուի: Ըստ այսմ կը հետեւինք անոր քաղած ծանօթութեանց, ինչպէս հետեւած են մեզմէ առաջիններն ալ:

**ԻՐ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

1317. Յակոբի առաջին ընտրութենէն 28 տարիներ անցած էին երբ վերստին կաթողիկոսութեան բարձրացաւ 1355'ին, հետեւաբար ծերացեալ հասակին մէջ վերստանձնած պիտի ըլլայ այդ պաշտօնը, երբ ոչ այնչափ ժիր գործունէութիւն, որչափ խոհական վարչութիւն մը կը սպասուէր ժամանակին պարագայից բերմամբ: Յակոբ յայտնի էր իր ճարտար ուղղութեամբ հայադաւան եկեղեցին պահելու և պաշտպանելու, առանց լատինականութեան դէմ բուռն պայքար մղելու, ջանալով որեւէ օգուտ մը քաղել անկէ, առանց Հայ եկեղեցւոյ ինկութենէն բան մը վրայ տալու: Մխիթար որ թերեւս աւելի ճկուն ու յարմարող պաշտօնի կոչուած էր, բոլոր իր ջանքերով ու գիջողութիւններով զգալի արդիւնք մը չէր յաջողած ձեռք ձգել. և այդ յուսախաբութիւնն էր անշուշտ որ ամէնքը նորէն Յակոբի դառ-

նալ կը յորդորէր։ Թուցէ յաջորդի ընտրութեան մասին ներհակ ուղղութեանց մրցումը դադրեցնելու դարման մըն ալ եղաւ՝ ծերունի կաթողիկոսը նորէն պաշտօնի կոչելով՝ հակառակութիւնները լռեցնելու խորհուրդը։ Մեծ գործունէութիւն չէր ըսպասուէր Յակոբէ, և չունեցաւ ալ. պատմութիւնը գրեթէ ոչինչ չպատմեր այն չորս տարիներուն մէջ, որ 1355'է ետքը անցան մինչեւ Յակոբի մահը։ Կոստանդին թագաւորն ալ ներքին համոզմամբ մեծ լատինասէր մը չէր, արդէն Գուիտոնի լատինամոլութեան դէմ ելլող խումբէն ընտրուած էր։ Այնչափ ինչ կ'ընէր որչափ բուռն հարկը կը պահանջէր և այդ մասին Յակոբ կաթողիկոսի հետ համամիտ էր։ Հռոմի հետ փոխադարձ՝ յարաբերութեանց և թղթակցութեանց բացակայութիւնն ալ դիւրաւ կը մեկնուի, քանի որ թագաւորն ու կաթողիկոսը Կիլիկիայէ դիմումներ չէին ըներ, որով պապերուն առիթ չէր ըլլար կրօնական համակերպութեան և հպատակութեան պահանջները նորոգել։

1318. Ունիթորներու առաջնորդ Յովհաննէս Քռնեցին վախճանած էր 1348 յունուար 6'ին (ՍԻՆ. 387), որով գրեթէ անգլուխ մընացած էին, և գործունէութիւննին սկարացած էր, զի Բարթողիմէոսի Լատին ընկերներն ալ, Պետրոս Արագոնացին և Յովհաննէս Անգղիացին նոյն միջոցներուն մեռած էին։

ՈՒՆԻԹՈՐՆԵՐ ՎԵՐԱԿԱԶՄՈՒԱԾ

Յովհաննէս ԻԲ պապէն Քռնեցիին առած կոնդակը՝ իբր յատուկ միաբանութիւն կը նկատէր Հայ Ունիթորները (§ 1278), բայց Քռնեցիին մահուընէ ետքը հետզհետէ տըկարացած էր Ունիթորներու կազմութիւնը, ոչ միայն յաղագս քրիստոնէութեան, այլ եւ ուղղափառութեան և [illegible] (ԿԱԼ. 524)։ Հետեւաբար պարտաւորուեցան Հռոմի յատուկ ձեռնտուութիւնը խնդրել, և այս նըպատակով երկու պատգամաւորներ յղեցին Աւինիոն Կղեմէս Զ'ի յաջորդ Իննովկենտիոս Զ պապին։ Գացողներն եղան Ջահկեցի հարազատ եղբայրներն, Թովմաս և Յամուէլ (ՍԻՆ. 388) կամ Ելեւթերիոս (ԿԱԼ. 524)։ Ունիթոռներու դիրքը աւելի զօրացնելու համար, այս անգամ 1356 յունուար 31'ի պապական կոնդակով, անոնք կատարելապէս ձուլուեցան Դոմինիկեան լատին միաբանութեան հետ, և Հայաստանի վանքերը ոչ եւս իբր Միաբանութիւն, այլ իբր Միաբանական տուն նկատուեցան, գաւառաձոր կամ գաւառական մեծաւորի մը իշխանութեան ներքեւ։ Ունիթորներու հետեւող հռոմէադաւան Հայերու համար ալ Նախիջեւանի անունով եպիսկոպոսական վիճակ մը կազմուեցաւ, և նոյն իսկ պատգամաւոր գացողները, Թովմաս՝ եպիսկոպոս և Սամուէլ՝ գաւառահայր նշանակուեցան (ԿԱԼ. 524)։ Դոմինիկեանց ընդհանուր մեծաւորը պիտի օգնէր և պիտի խնամէր Հայ վանքերը, բայց և մերթընդմերթ իր կողմէ այցելուներով պիտի քններ անոնց ընթացքը, և պիտի տայր պէտք եղած հրամանները։ Այսպէս իրենց սկզբնաւորութենէն քիչ ետքը իբր Հայ գործող Ունիթորները. պաշտօնապէս լատինութեան կ'անցնէին։ Մէկ կողմէն միջոցներու նուազութիւնը, և միւս կողմէն կերպարանին փոփոխութեան պատճառով, Ունիթոռներ չկրցան այս ատեններ մեծ գործունէութիւն ունենալ, մինչեւ որ Իննովկենտիոսի կարգադրութեամբ յաջողեցան նորէն կազմուիլ և զօրանալ, և Հայ եկեղեցւոյ դէմ յարձակումներու ձեռնարկել։ Իրենց կեդրոնը հաստատուեցաւ Նախիջեւան և Ջահուկ և Շահապունիք գաւառներու մէջ, բայց հետզհետէ Ջահուկի մէջ ամփոփուեցան, և այս պատճառով Ջահկեցի կոչուեցան։ Անոնք որ Մեծ Հայոց կողմերը հռոմէադաւանութեան կը հետեւէին, ինչչափ ալ անձուկ և սահմանափակ կերպով, քանի մը դարեր տեւող գոյութիւն ունեցան։ Միշտ Ներսէս Պաղոնի և Սիմէոն Պէկի անուններն ալ այլ եւս չեն յիշուիր պատմութեան մէջ, որով անոնց ալ այդ միջոցին մեռած ըլլալը կը հետեւի։ Արդէն բաւական ժամանակ էր, որ իրենց տարադէպ գործունէութիւնը կը շարունակէին, բայց չենք կրնար ճշդել, թէ ո՞ւր, Արեւելքի՞ թէ Արեւմուտքի մէջ կնքեցին իրենց արկածալից կեանքը։

1319. Յակոբի երկրորդ կաթողիկոսութեան միջոցին տեղի ունեցաւ ահեղ սրածութիւն մը, որ շատ մը կեանքերու կորուստ պատճառեց Կիլիկիոյ մէջ։ Թագու-

մը յայտնի չէ, բայց կրնայ հետեւանք ըլլալ 1356'ի ապստամբին, և կամ պարզ մահտարաժամ մը եղած ըլլալ վարակիչ հիւանդութեանց երեւէն։ Նկատելի կէտ մըն է, որ հակառակ սովորական պատահարաց, ուր ընդհանրապէս ստորին դասակարգն է որ զոհ կ'երթայ վարակիչ ախտերու, այս պարագային եկեղեցականներու և ազնուականներու դասակարգէր բազմաթիւ զոհեր տուին, մինչեւ իսկ Կոստանդին Թագաւորի որդին Պողոսն վարակուեցան և մեռան ի մէջ աւուրց տօնից, և այս այնչափ աչքի զարկաւ, որ իբր աստուածասաստ պատուհաս կ'ուզէ մեկնել զայն լատին պատմիչը, իբր զի չէր նա յօրինանէ գործն անոր Հայոց (ԴԱՐ. 58)։ Ասով Լուսինեանց ազգատոհմին ժառանգական իրաւունքին բռնաբարող մը կ'ուզէ ցուցնել Նզրեցոց ազգատոհմէն եղող Կոստանդինը։ Իսկ արկածին թուական կը ցուցուի 1359 տարին (ՍԻՍ. 560)։ Յակոբի կաթողիկոսութեան երկրորդ մասը համառօտ եղաւ, զի 1359'ին կնքեց նա իւր կեանքը, ինչպէս կ'երեւի տարիներու երկարութեան և աղէտներու ծանրութեան ներքեւ ճնշուած։ Դժբախտաբար օրինաւոր պատմագիրներ չունենալով, կցկտուր և ցրիւ յիշատակներով կը պարտաւորուինք կազմել ժամանակիս պատմութիւնը, չոր ակնարկներ միայն տալով, առանց անոնց հանգամանքները ու չարժառիթները կարենալ բացատրելու։ Իսկ Յակոբի անձին և գործերուն մասին բաւական գրեցինք պատմութեան կարգին, և պէտք չենք տեսնար նորէն անդրադառնալ անոր ուղղութիւնն ու ընթացքը բացատրելու, կամ արժանիքը գնահատելու համար։

**ՅԱԿՈԲԻ ՄԱՀԸ**

1320. Այստեղ մեր սովորութեան համեմատ ժամանակակից նշանաւոր անձերն ալ յիշել ուզելով, միայն երկու նահատակներու անուններ կը գտնենք, և գերեզմանները Անիի մօտ գտնուելէն, Անեցիներ ըլլալնին կը հետեւցրնենք։ Այս երկուքն են, Կիրակոս վարդապետ և Սարգիս քահանայ, վասնզի կը կարծենք թէ արձանագրութեան Ա. Սարգիս-գրուածը պէտք է Տ. Սարգիս կարդալ։ Առաջինին համար ըսուած է թէ նահատակեցաւ յանօրինաց։ Իսկ երկրորդը՝ իւր եղբայրը Կազեր որդի Միւռոնի, որ է Նանիանու գտած է ի խորափոյն հոգի փառաւոր արարած (ՇԱԿ. 34)։ Որչափ և նոր վկայից հաւաքիչները, երկուքն ալ մարտիրոսներու կարգ են անցուցած (ՆՈՐ. 133), սակայն հնար է որ պարզապէս աւազակային սպանութեանց զոհ գացողներ ըլլան, քանի որ վկայաբանական յիշատակներ կը պակսին։ Կիրակոսի համար յայտնապէս 1348 թուական տրուած է, և անոր ժամանակից կ'երեւի Սարգիսն ալ։

**ԿԻՐԱԿՈՍ ԵՒ ՍԱՐԳԻՍ**

# Տ. ՄԵՍՐՈՊ Ա. ԱՐՏԱԶԵՑԻ

1321. Յակոբի յաջորդն եղաւ Մեսրոպ Արտազու արքեպիսկոպոս ու Թադէոսի վանքին առաջնորդ (ՉԱՄ. Գ. 353), և յայտնի չէ թէ պատահմամբ Սիս գտնուելով, կամ ներհակընդդէմ մրցումներու վերջ տալու համար, այսպէս հեռուէն անձ մը հայրապետական աթոռ բարձրացած է։ Ոմանք սոյն Մեսրոպը կը նոյնացնեն Խորձեանի եպիսկոպոսին հետ (ՉԱՄ. յաւ. 110), որ Մխիթարի ժողովին ներկաներէն էր (§ 1291), սակայն լոկ անուններու մերձեցում մըն է, առանց ուրիշ մէկ նշանի։ Դավրիժեցին 1364'ին կը դնէ Մեսրոպին կաթողիկոսութիւնը, այլ նա յայտնապէս գրած է, որ ոչ թէ սկզբնաւորութեան թուականները կը նշանակէ, այլ այն տարին որուն մէջ կաթողիկոսը մը պաշտօնի վրայ ըլլալը գրած է։ Մեսրոպի աւելի կանուխ ալ պաշտօնի վրայ ըլլալուն կը վկայեն ուրիշ յիշատակարաններ ալ, որ 1360'ին Մեսրոպը կաթողիկոս կ'արձանագրեն (ԹՈՐ. Բ. 381, 437), որով կ'արդարանայ 1359'ին ընտրուած ըլլալուն սովորական թուականը։

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆ ՈՒ ԸՆԹԱՑՔԸ**

Բաւական ժամանակ էր որ չարունակ Կիլիկեցիներ էին հայրապետութեան գահակալները, սակայն հաւանական չէ, որ Մեսրոպը հեռուէ բերելով ուզած ըլլան տարբեր ուղղութիւն մը տալ գործերուն։ Արտազեցիներ ալ արդէն, Զաքարիա Ծործորեցիի օրէն, հակամէտ էին դէպի միութիւն, և սիրով կ'ընդունէին այդ նպատակին ծառայող պայմանները, մօտաւորութիւն կը ցուցնէին իրենց կողմերը գտնուող լատին կրօնաւորներուն, և կը ջանային օգտուիլ անոնց ուսումէն ու հմտութենէն, բայց միանգամայն հեռու էին լատինամոլներու ծայրայեղամիտ նմանողութենէն, և Հայոց եկեղեցին կատարելապէս լատինակերպ և համէմատաւան ընելէն։ Մեսրոպ ալ հարկաւ այդ ուղղութեան հետեւող մըն էր, և իր ընտրութիւնը պէտք է մեկնել իբր չափաւորութիւն մը Կիլիկիոյ լատինասէր ուղղութեան մէջ, քանի որ լատինասիրութիւնը, առանց երկրին քաղաքական օգուտ մը բերելու, ներքին երկպառակութիւններու պատճառ կ'ըլլար։ Լատինամոլութեան երկու մեծ գայթակղեցուցիչ կէտերն եղած էին բաժակին ջուրը և Ծնունդին տօնը, որոնք առիթ կ'ընծայէին հակառակորդներուն «որոշէ և բրոյ պատահել իրերաց և ծաղրանս անէրս գործել»։ Մեսրոպի առաջին հոգածութիւններէն մին եղաւ, համոզիչ միջոցներով միտքերը հանդարտեցնել, նորութեանց հետեւողները իւրովի ետ կեցնելու աշխատիլ, և ժողովուրդին մէջէն յուզիչ և գայթակղեցուցիչ առիթները պակսեցնել։ Բայց երբոր տեսաւ որ մոլեռանդներու խօսք հասկցնել հնար չըլլար, քանի որ անոնք Սսոյ և Ատանայի ժողովներուն հեղինակութեամբ կը զօրանային, մինչ ժողովուրդը առջի օրէն բողոքած և հակառակած էր այդ ժողովներուն դէմ, և քանի որ եպիսկոպոսներն ալ պարտք չէին զգացած այդ որոշումներուն համակերպիլ ու գործադրել, Մեսրոպ պէտք զգաց պաշտօնական միջոցներ ձեռք առնել միտքերը հանդարտեցնելու համար։ Կոստանդին թագաւորին հետ կամակից միաձայնութեամբ ժողով մը գումարեց Սիսի մէջ, ուր նկատի առնուեցան նախընթաց գործողութիւնները, անոնց հետեւութիւնները, պարագայից պահանջներուն վրայ երկար խորհրդակցութիւններ կատարուեցան, և վերջապէս ժողովական վճռով որոշուեցաւ բաժակին ջուր խառնելը խափանել, և ջրախառն բաժակի կիրառութիւնը իսպառ դադրեցնել Կիլիկիոյ մէջ, (ՉԱՄ. Գ. 355), կամ լաւ եւս Սիսի մէջ, որովհետեւ անկէ դուրս արդէն ընդհանուր գործածութեան ալ չէր մտած, այլ լոկ անհատարար ջուր խառնողներ կը գտնուէին։

1322. Պատմական եղելութեանց կարգին կարեւոր կէտ մըն է Մեսրոպի օրով

ՍՍՈՅ ՆՈՐ ԺՈՂՈՎԸ

1361'ին գումարուած Սըսոյ ժողովը, զոր Չամչեան Կիլիկեցւոց պատմութենէն քաղելով թեթեւակի իմն կը յիշէ, և գործը միայն ջրախառն բաժակին վրայ կը մանաւորէ։ Դըժբախտաբար ձեռքի տակ չգտնուիր այդ գործը ամբողջութեամբ պատմող հեղինակ մը, որ կարենայինք կատարեալ ուսումնասիրութեամբ գործը բացատրել։ Սակայն դիւրին է հասկնալ, թէ խնդիրը լոկ ջրախառն բաժակի վրայ չէր կրնար ամփոփուիլ, այլ բոլոր նոր և օտարամուտ ձեւեր պէտք էր միանգամայն վերնային, և այդ միտքով Երեւանեցին բացատրօրէն կը գրէ, թէ Մեսրոպ «եբարձ զջուրն ի սուրբ խորհրդոյն, և հերքեաց զխառնուրդութիւնն՝ որ մուծեալ էր ի Հայս ի Կոստանդին հերձուածողէն, որ է Կեսարացին, և յՕշէն Բագաւանէն» (ՉԱՄ. 17)։ Հարկաւ աղբիւր մըն ալ ունեցած է այսպէս բացայայտ գրելու համար։ Ժողովական գործերուն ձեռուընիս հասած չըլլալը, չկրնար երբեք ժողովին հեղինակութիւնը նուազել, և համէմատականներուն ալ փաստ չըլլար անոր կարեւորութիւնը ուրանալու։ Եթէ առանց կաթողիկոսի գումարուած Սսոյ ժողովի մը հեղինակութիւնը կը բարձրացնեն, կամ Կեսարացիին նորութիւնները Ատանայի ժողովին որոշումներով կ'ուզեն հաստատել, պէտք է որ Մեսրոպի գումարած ժողովին ալ, թէ ոչ աւելի, գոնէ համահաւասար զօրութիւն ճանչնան։ Եւ եթէ նախնեաց հնաւանդ սովորութիւնները խախտող գումարումները, իբր օրինաւոր ժողով կ'ընդունին, եւս առաւել այդ օրինաւորութիւնը կը պատշաճի օտարամուտ նորութիւնները խափա-

նոդ գումարումին։ Ըստ այսմ դիմացէ դիմաց կ'ունենանք համանման գործեր, ժողով մը՝ որ նախնեաց կանոնները կ'այլայլէ և նորութիւններ կը մուծանէ, և ժողով մը՝ որ նորութիւնները կը խափանէ և նախնեաց կանոնները կը հռչակէ։ Այդ պարագային մէջ, հարկաւ առաւելութիւնը պէտք է տալ այն ժողովին, որ բազմադարեան կանոններուն կը համաձայնի, և քանի մը տարի առաջ մուծուած պիտակ նորութիւնները կը ջնջէ։ Ըստ այսմ հռոմէադաւաններուն ամբութեան գլխաւորներն եղող Սսոյ և Ադանայի ժողովները անզօր կը դառնան, ոչ միայն այն դիտողութեանց հիմամբ զորս իրենց կարգին գրեցինք (§ 1235, 1257), այլ և զօրութեամբ պաշտօնական գործողութեանց։ Հարկաւ այլ ևս պիտի չկրնան ըսել, թէ Կեսարացիին ժողովը տարբեր բան մը եղած ըլլայ, քան Արտազեցիին ժողովը։ Մենք պնդեցինք և կը պնդենք, թէ կաթողիկոսի մը մոլեռանդ կամքը, և ուրիշ կաթողիկոսի մը արտաքին զիջողութիւնը չեն կրնար փոփոխել Հայ եկեղեցւոյ իսկական կերպարանը, և թէ ընդդատիչ պարագայից ներքև գումարուած, և յետոյ ուրիշ ժողովով յետս կոչուած ժողովական գործեր բնաւ չեն զօրեր հռոմէադաւան դրութիւնը ամրացնել։

**ԿՈՍՏԱՆԴԻՆ ԲԱՂԴԻՆԵԱՆ**

1323. Կիլիկիոյ թագաւորութեան կացութիւնը հետզհետէ իւր քայքայման կ'երթար, քանի որ ոչ ներքին ոյժ մը ունէր վտանգին դիմադրելու, և ոչ ալ արտաքին ոյժ մը՝ որ իրեն հովանաւորէր։ Լատինականութեան աղէտը, ինչպէս պէտք է կոչել ժամանակին տագնապը, կրկնակի կը վնասէր արդէն տկարացեալ թագաւորութեան։ Դէպ Արևմուտք դիմումը կը գրգռէր շրջակայ թշնամիները, լատինական ձևերն ու կերպերն կը պառակտէին ժողովուրդը, արքունիքին լատիններու ձեռք անցնիլը, և նոյն իսկ Հայոց թագաւորական գահին վրայ Լատիններուն բարձրանալը, անբուժելի կը դարձնէր գայրացած կացութիւնը։ Հալէպի կուսակալ Պէկ-Թիմուր, 1360'ին Տարսոնն ու Ադանան կը գրաւէր, Կոռիկոսի բերդը գրեթէ անպաշտպան մնացած՝ Հայոց թագաւորութենէն բաժնուելով Կիպրոսի իշխանութեան ներքև կը մտնէր 1361'ին, Կոստանդին թագաւոր անզօր և անկար յարձակումները վանել, գոնէ մնացածը պաշտպանելու ճիգերով կը տագնապէր, և կ'աշխատէր մինչև իւր կեանքին վերջը, 1363'ին սկիզբները։ Առանց մեծ գործ մը կատարելու և առանց մեծ ոյժ մը ունենալու 19 տարի թագաւորեց Կոստանդին Բաղդինեան, միակ արժանիքն ունենալով ըստ կարելւոյն յետաձգած լինելու Հայ թագաւորութեան վերջնական անկումը։ Ընդդատեալ լատինասէր, այլ ոչ երբեք լատինամոլ, Հայ թագաւորութեան և Հայ եկեղեցւոյ հայկական տիպարը պահելու աշխատող, Կոստանդին ունեցաւ միտքի գնահատելի ուղղութիւն մը, ցուցուց կարողութեան չափաւոր ձիրք մը, այլ չկրցաւ կործանման առջևը առնել, թէպէտև յաջողեցաւ զայն հեռացնել իւր իշխանութեան բաւական երկար տևողութեան առեն։ Իւր մահուանէ ետև ծանրացած աղէտը փաստ մըն է, որ գոնէ անուղղակի իւր ճիգը կը բարձրացնէ։ Կոստանդին անժառանգ կը մեռնէր, զի իւր զաւակները վարակիչ սրածութեան զոհ գացած էին (§ 1319), և յաջորդութեան խնդիրները նորանոր աղէտներ բարդեցին արդէն աղէտալից կացութեան վրայ։ Լուսինեան Ջիւանի անդրանիկն Պէմունդ 24 տարեկան երիտասարդ մը եղած էր, և Կիպրոսի թագաւորին պաշտպանութիւնը կը վայելէր։ Պետրոս Ա., որ Հուգոն Դ'ի յաջորդած էր (§ 1313), ուզեց զայն նստեցնել Հայոց գահուն վրայ, զոր ժամանակ մը վարած էր անոր հայրը, և որուն նա ժառանգ կը նկատուէր հօրեղբօրը Գուիտոնին մահուընէ ետքը։ Ինքն Պետրոս ալ պէտք կը զգար անձամբ տեսակցիլ Ուրբանոս Ե պապին հետ, որ տարի առաջ յաջորդած էր Իննովկենտիոս Զ'ի, Աւինիոնի մէջ։ Ուստի երիտասարդը մէկտեղ առած ճամբայ ելաւ, որպէս զի պապական հաստատութեամբ ապահովէ Պէմունդի թագաւորութիւնը։ Բայց երիտասարդը ծանրապէս հիւանդացաւ ճանապարհին և Վենետիկի մէջ մեռաւ (ԴԱՐ. 58)։ Պետրոս իւր ճամբան շարունակեց, Ուրբանոսի հետ տեսակցեցաւ, և Հայոց թագաւորութիւնը Լուսինեաննե-

*րուն պահելու համար, յատուկ պապական կոնդակ մը առաւ Պէմունդի եղբօր Լեւոնի անունին 1364 ապրիլ 11 թուականով* (ՁԱՄ. Գ. 356), *զոր սակայն իրեն մօտ պահեց* (ԴԱՐ. 58)։

**ԿՈՍՏԱՆԴԻՆ ՀԵԹՈՒՄԵԱՆ**

1324. *Երբոր Կոստանդին Բաղդինեան անժառանգ մեռաւ, յաջորդութեան խնդիրը պատճառ եղաւ զանազան կուսակցութիւններ կազմելու, և Կիլիկիա պառակտեցաւ։ Լուսինեաններ իրենց կողմնակիցներն ունէին, որոնք Պետրոսի ալ դիմեր էին Պէմունդն ուզելու* (ԴԱՐ. 57), *որք սակայն կացութեան տէր չէին։ Ինքզինքնին առջեւ քշող բախտախնդիրներ ալ կային, որոնցմէ կը յիշուին Լեւոն Լուսինեան մը և Նիկոլ Լուսինեան մը, որք սակայն չեն կրցած յաջողիլ, և մերժուած ու սպանուած են հակառակ կուսակցութիւններէն* (ՍԻՍ. 560)։ *Ընդհանուր պառակտումներու մէջ զօրացաւ Նղրեցոց կողմը, և Կոստանդին Բաղդինեանի յաջորդ նշանակուեցաւ նորա հօրեղբօրորդին, նոյնպէս Կոստանդին անուն, որդի Բաղդինի եղբօր Հեթում Ջամբռլայի, կամ արքունական սենեկապանի, որ մեռած էր 1356'ին* (ՍԻՍ. 560), *և Հեթումէ քիչ առջ, 1358 մայիս 21'ին վախճանած էր նաեւ անոր կրտսեր որդին Ջօֆրէ, 34 տարեկան* (ՍԻՍ. 413)։ *Այս հաշուով Կոստանդին Հեթումեան, որ երիցագոյն էր, 1363'ին թագաւոր հռչակուած ատեն, գոնէ 40 տարեկան եղած պիտի ըլլայ։ Այս Կոստանդինն է որ Ռուբինեանց գահին վրայ մնաց 10 տարիի չափ, բայց երկու Նղրեցի Կոստանդիններու իրարու յաջորդելը, պատճառ եղած է ոմանց երկուքը միացնելու, և ուրիշներուն ալ՝ մականուններուն տարբեր կերպով նշանակուելէն՝ անոնց թիւը բազմացնելու։ Երեւանեցին, Գուիտոնի և Լեւոնի մէջտեղ կը դնէ,* Թագաւոր Հայոց Կոստանդին, յետոյ և միւս Կոստանդին, յետոյ և միւս Կոստանդին, և միւս [illegible] Կոստանդին (ՋԱՄ. 17), *մինչ Դարդէլի ժամանակագրութիւնը երկու Նղրեցի Կոստանդիններ միայն կ'ընդունի, Բաղդինեանը և Հեթումեանը* (ԴԱՐ. 59)։ *Հեթումեանին իբր թագաւոր ընդունուիլը կը վերագրուի իւր [illegible], որով յաջողեցաւ ոչ միայն Կիլիկեցի իշխանները վաստըկիլ, այլեւ նոյն իսկ Կիպրոսի թագաւորը իրեն կողմը դարձնել, և անոր ձեռքով անգործադրիր թողուլ Լեւոնը թագաւորեցնելու համար Ուրբանոսի տուած պապական կոնդակը* (§ 1323), *զոր Պետրոս* պահեաց ի ծածուկ ու եցոյց, և ու [illegible] իշխանն Լեւոն (ԴԱՐ. 59)։ *Այդ կոնդակին թուականը պատճառ եղաւ չատերուն 1365'էն Լեւոնը Հայոց թագաւոր եղած կարծել* (ՁԱՄ. Գ. 356), *սակայն Դարդէլի ժամանակագրութիւնը կը ցրէ այդ դրութիւնը, և մէջտեղ կը հանէ Պետրոսի տարօրինակ ընթացքը, որ կրցաւ գրեթէ 10 տարիներ գաղտնի պահել և անհետեւանք թողուլ իրեն համար նուիրական սեպուող պապական կոնդակ մը։ Դարդէլ ոչ միայն ժամանակակից մըն է, այլ և Լեւոնի խոստովանահայրն ու խորհրդականն և անոր անձնական պարագաներուն մօտէն տեղեակ էր։ Այլ թէ ինչպէս կրցաւ Պետրոս այս տեսակ գործ մը յաջողցնել, որ ոչ Ուրբանոս իւր կոնդակին գործադրութիւնը պահանջէ, և ոչ Լեւոն իւր իրաւունքը փնտռէ, պատմութենէ բացատրութիւններ չունինք։ Սակայն դիւրին է նկատել, որ պապին կոնդակը նոյն ինքն Պետրոսէ ուզուած էր, և պապը անոր յանձնած էր պատշաճ կարգադրութիւնն ընել, իսկ Լեւոն փորձանքներ անցած և Պետրոսի պաշտպանութեամբ յառաջ եկած, անոր հրամաններէն ներքեւ զինուորական մըն էր, որ խրոխի բան մը կարգադրելու միջոց չունէր, և Լուսինեան գերդաստանին ալ՝ ան եղող Պետրոս թագաւորին պարտաւոր էր անսալ։ Դարդէլի տուած մանրամասնութիւններէն այնպէս կ'երեւի, թէ Պետրոս* ընդմէջ գողին ու եցոյց իշխանին Լեւոնի, պահեաց զնշխեանն, և ու եհան ի վեր (ԴԱՐ. 60), *որով Լեւոն տեղեկութիւն ունեցած չըլլար իրեն մասին եղած կարգադրութենէն, բայց եթէ գիտցած ալ ըլլար, համակերպելէ զատ եղանակ չունէր։*

1325. *Կոստանդին Հեթումեան թէեւ յաջողեցաւ 10 տարի արքունական գահը պահել, գժուարին և աղետալից միջոցի մէջ, սակայն պատմական յիշատակներ չեն ներեր իւր վրայ գովեստի և գնահատումի նպաստաւոր կարծիք մը կազմել։ Իրաւ գրը-*

*խաւորապէս Դարդէլն է այդ յիշատակնե- րուն աղբիւրը, որ երկու Նզբեցիներն ալ իբր բանաւորներ և Լու-*

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԱՐՁՈՒԱԾՆԵՐ**

*սինեանց իրաւունքը բրո- նաբարողներ կը նկատէ, և այդ տեսութեամբ զա- նոնք գարովել և աղտեղել կ'աշխատի, սակայն պարզ իրողութիւններն՝ ալ անկաշկանդ միտքով զննուած առեն, Կոստանդին Հե- թումեանի համար նպաստաւոր եզրակացու- թեան չեն տանիր։ Կիլիկիոյ թագաւորու- թեան սահմաններուն ամփոփուիլը, որ իր նախորդին օրով սկսաւ, տակաւ կը յառա- ջէր, այնպէս որ գրեթէ Սիսի շրջանակին մէջ կը պարփակուէր՝ երբեմն Կիլիկիայէ դուրս Փոքր Ասիոյ և Ասորիքի մէջ տարած- ուած թագաւորութիւնը։ Կոստանդին արեւ- մուտքի Լատիններէն յոյսը կտրելով անոնց չմօտենար, բայց բոլոր յոյսը կը կեդրո- նացնէ Կիպրոսի Լուսինեաններուն վրայ, և կաշառի միջոցներով և ճորտութեան մօտիկ քծնումներով անոր պաշտպանութիւնը կ'ա- պահովէ, մինչեւ իսկ յայտարարելով թէ հաճեցաւ ընդունել զնա և զնախարարութիւն նորա և զինչս նորա զամենայն (ԴԱՐ. 59)։ Կոս- տանդինի փարթամութեան ծագումն ալ կը մեղադրուի, որովհետեւ զայն կուտեալ էր կեղծեալ զերկիրն և յափշտակեալ զինչս ժողո- վրդեան (ԴԱՐ. 60)։ Հպատակները իրմէ դժգո- հ, ձեռքէն ազատելու համար, 1368'ին նոյն իսկ Պետրոսը հրաւիրեցին Հայոց թա- գաւորութիւնը իրենին կցելու (ՍԻՍ. 560), սակայն Պետրոս հարկ չտեսաւ անմիջապէս գրաւելու փութալ, զի գերիշխանի դիրքը կը վայելէր Կոստանդինի վրայ, և քիչ ետքն ալ, 1361'ին, Կիպրոսի աւագանիէն սպան- ուեցաւ (ԴԱՐ. 60), որովհետեւ ինքն ալ իր իշխանութեան մէջ ոչ նուազ անտանելի էր, քան իր պաշտպանեալ Կոստանդինը։ Պետ- րոս Ա.'ի յաջորդ հռչակուեցաւ որդին Պետ- րոս Բ, տակաւին 9 տարեկան, իր հօրեղ- բօր Ցովհաննէս Լուսինեանի խնամակալու- թեան ներքեւ։ Ասոր ձեռքն անցաւ Սեր- րանոս պալլին Լեւոնի համար տուած կոն- դակը, այլ Կոստանդին փութաց Ցովհան- նէսն ալ վաստկիլ ապստամբեալ գործեաց մեծա- մեծս և ընծայս, ու կոնդակը նորէն պահուե- ցաւ ու ծածկուեցաւ, և Ցովհաննէս ոչ եհան ի ձեռ զնեղեալն (ԴԱՐ. 60)։ Կոստանդին Սիսի մէջ իր հարստութիւններով մէկտեղ հան- դարտ չէր, զի Եգիպտացիք չուրջը պատած կ'ուզէին որոշիչ հարուածը տալ, և Ասիոյ քրիստոնեայ իշխանութեանց վերջին մնա- ցորդը բնաջինջ ընել։ Ցարձակումները նոր ոյժ առին Պետրոս Ա.'ի մահուընէ ետքը, ուսկից կ'ակնածէին Եգիպտացիք, քանի մը անգամ հարուածուած ըլլալով՝ անոր նաւա- յին յարձակումներէն։ Խօշթիմուր Հալէպի ամիրան և Մանչակ Տարսոնի ամիրան շա- րունակ կը նեղէին Սիս քաղաքը պաշար- մամբ և շրջակաները աապատակով, մին- չեւ իսկ Սիսը այրելով (ՍԻՍ. 226), բայց Կոս- տանդինի բախտէն արիասիրտ հրամանատար մը կար իրեն մօտ, որ քանիցս կը յաջողէր թշնամիները ցրուել։ Լիպարիտ անունով կը յիշուի այն, որդի Թորոս մարաջախտի, և եղբայր Վասիլի (ՍԻՍ. 542), որ աւելի ետքը պիտի յիշուի։ Սակայն վերջապէս Լիպարիտ ալ ինկաւ կոտորածի համար առջեւ քա- լած, և իրեններուն կամաւ կամ ակամայ իրմէ հեռացած մէկ պահուն։ Լիպարիտի անունը մինչեւ յետին ժամանակներ հռչակուած էր Սսեցւոց մէջ, և ժողովրդական երգերու նիւթ եղած (ՍԻՍ. 227)։ Անոր տեղ անցաւ Հեթում մը, որ քաջութեան մասնաւոր գոր- ծեր ալ կատարեց Եգիպտացւոց դէմ, սա- կայն այն ալ Գրիգոր մատնիչէ մը սպան- ուեցաւ, և իր կինը Զարմանուհի լեռներ քաշուելով պատերազմիկ խումբի մի գլուխ կանգնեցաւ (ՍԻՍ. 184)։ Բայց այս ամէն վերջին ճգնաժամի քաջութիւններ, չէին կրնար Սիսի վտանգալից վիճակին արմա- տական դարման ըլլալ։*

**1326**. *Այդ խառնակ կացութեան մէջ Մեսրոպ կաթողիկոսի անունը չյիշուիր, և ոչ ալ կրօնական խնդիր-*

**ՆՈՐԷՆ ԴԻՄՈՒՄՆԵՐ**

*ներու յիշատակութիւններ կ'ըլլան։ Արեւմուտքի հետ խզուած յարաբերութիւն- ները հարկաւ առիթ չէին տար եկեղեցա- կան պահանջներ առաջարկելու, և փոխա- դարձ բացատրութիւններ կրկնելու, ինչ որ Մխիթարի օրերուն նկարագիրն էր եղած։ Մեսրոպ, որ համարձակութիւնը ունեցած էր մինչեւ իսկ Սսոյ և Ադանայի ժողովնե- րուն որոշումները նոր ժողովով ջնջել (§*

1322), հայադաւան և հայածէս ուղղութիւնը ամրապնդելու կ'աշխատէր, և այդ մասին իրեն օգնական ունէր թագաւորն ալ։ Կոստանդին Հեթումեան թէ անձնական և թէ քաղաքական տեսակէտներէն պէտք էր որ կաթողիկոսին ուղղութիւնը հովանաւորէր, որովհետեւ պարտաւոր էր Լուսինեանց ազգատոհմին հետ մաքառիլ իւր թագաւորութիւնը ապահովելու համար, և լատինականութեան զօրանալը Լուսինեանց և Լուսինեան կուսակցութեան կը նպաստէր։ Այդ մասին թագաւոր և կաթողիկոս իրարու համամիտ և գործակից էին, բայց չենք ուզեր այդ գործակցութիւնը Կոստանդինի անտեղի գործերուն վրայ ալ տարածել։ Մեսրոպի ընթացքը խոհական անձի մը նկարագիրը կ'ընծայէ մեր աչքին, և չենք կարծեր թէ ստորնութեանց ալ զիջած ըլլայ. միայն թէ գէշ աղէկ, վերջապէս Հայ թագաւոր մըն էր Կոստանդին, որ Հայ թագաւորութեան համար կ'աշխատէր թէ ոչ անձամբ, գոնէ իւր զօրավարներով, և Մեսրոպի ներեալ չէր անոր ընդդիմանալ, կամ զայն տկարացնել։ Բայց լատինասէրներու կամ Լուսինեան կուսակիցներու հետքը ջնջուած չէր Սիսի մէջ, միայն թէ աւելի քաղաքական նպատակներու կը ծառայէին, և տիրող ուղղութեան դէմ մաքառելու չափ զօրաւոր չէին, և պէտք կը զգային տեղէ մը օգնութիւն գտնել։ Մարիամ թագուհի՝ Կոստանդին Բաղդինեանի այրին, որ Օշին խնամակալին Յովհաննայէ ունեցած դուստրն էր (§ 1311), աւելի իւր ազգատոհմէն քան իւր ամուսնոյն ուղղութենէն ներշնչուելով (§ 1323), լատինասէրներուն գլուխն էր անցած, և 1271'ին յատուկ դեսպանութիւն մը կը ղրկէր Արեւմուտք, Սսոյ արքեպիսկոպոս Յովհաննէսէ և Թարգման Մանուէլ Յովհաննէսեանէ բաղկացած, որպէս զի թէ իւր ազգականներուն և թէ պապին մտադրութիւնը հրաւիրէ Կիլիկիոյ գործերուն վրայ։ Գրիգոր ԺԱ պապ, որ տարի առաջ յաջորդած էր՝ Ուրբանոս Ե'ի., և պապական աթոռը նորէն Հռոմ փոխադրած էր, խորհուրդ կու տար 1372 յունուար 22'ի նամակով, Մարիամ այրի թագուհին՝ Պրունզուիքի Ոթոն (Otton de Brunswick) իշխանին հետ ամուսնացնելով, Կիլիկիոյ թագաւորութիւնը զօրացնել։ Առաջարկը տեղի չունեցաւ, բայց Լուսինեանց կողմը աւելի համարձակութիւն ստացաւ՝ իրեն մասին մտադրութիւն դարձուած տեսնելով։

**ՄԵՍՐՈՊԻ ՄԱՀԸ**

1327. Չենք գիտեր թէ ինչ դեր կը վարէր Մեսրոպ կաթողիկոս այդ պարագային մէջ, բայց Լուսինեանց նպաստաւոր եղած չերեւիր։ Արդէն ալ յիշեալ 1372 տարին իւր մահուանն ալ թուականն է։ Իսկ Երեւանեցիին 1384 թուական ցուցնելը, ինչպէս նաեւ Մեսրոպի 26 տարի պաշտօնավարութիւն տալը (ՋԱՄ. 17), Անեցիին չարունակողին շփոթ տեղեկութենէն (ՍԱՄ. 169) ծագում առած կ'երեւի։ Մահուան օրն ու ամսաթիւը նշանակուած չունինք, բայց ամենայն հաւանականութեամբ նա չէ հասած նոր առաջարկէն տեղեկութիւն ունենալ, կամ այդ մասին բան մը ընել։ Մեսրոպի պաշտօնավարութեան մէջ, քաղաքական տեսակէտէն մեծ գործունէութիւն չենք գտներ, բայց չենք կրնար ալ մեղադրել, զի պարագաներ ու միջոցներ ձեռնտու չէին։ Իսկ կրօնական տեսակէտէն արդիւնաւոր պէտք է ճանչցուի, իւր նախորդներուն լատինամոլ ուղղութիւնը կասեցնելովը, որով թէ հայադաւան և հայածէս դրութիւնը ամրապնդելու, և թէ ապագային առաւելագոյն վտանգի մը առջեւն առնելու պատճառ եղաւ։

**ՄԵՍՐՈՊԻ ՕՐՈՎ**

1328. Ունիթորական գործունէութիւնը իւր օրով չկրցաւ Կիլիկիոյ մէջ ընդարձակուիլ, գոհանալով հետզհետէ զօրացնել այն դիրքը զոր Ջահկեցի եղբայրներ՝ Թովմաս և Սամուէլ ձեռնարկած էին հաստատել Արեւելեան գաւառներու մէջ, և արդէն հարիւրի չափ միաբաններ ունէին եօթը վանքերու մէջ (ՍԻՆ. 389)։ Մեսրոպի օրով մեծագոյն վտանգ մը անցուց Երուսաղէմի աթոռը։ Պետրոս Ա Կիպրոսի թագաւորը, Արեւմտեաններու ձեռնտուութեամբ յաջող յարձակում մը ըրած էր 1365'ին Եգիպտոսի վրայ և հոկտեմբեր 10'ին Աղեքսանդրիա քաղաքը գրաւած (ՍԻՍ. 560), մեծամեծ վնասներ

և կոտորածներ հասցնելով բնակիչներուն, և իբր թէ մինչև երկոտասան հազար հոգի աղջիկ տանելով (ՍԱՄ. 170): Եգիպտացիք ձախողութեան հակահարուածը հասուցին Պաղեստինի քրիստոնէից վրայ, սաստիկ հալածանք մը հանելով, եկեղեցիները փակելով, կրօնափոխութեան բռնադատելով, և շատեր մահուան դատապարտելով: Ս. Յարութեան տաճարն ալ փակ մնացած է 4 տարի, և Ս. Յակոբայ Հայ միաբանութիւնը երկու անգամ խմբովին Գազա տարուած է դատուելու համար: Մկրտիչ պատրիարք զանազան տանջանքներով և ծանր շղթաներով չարչարուած է, Գրիգոր և Կիրակոս արեղաներ բռնուած հարուածներու ներքև նահատակուած էն, Մխիթար Բէյիզ և միաբան մը Եգիպտոսի մէջ սպանուած են, և ուրիշ շատեր ալ մարտիրոսութեամբ վըկայած են, այդ չորս տարիներու ընթացքին (ԱՍՏ. Ա. 212), մինչև որ հալածանքը դադրեցաւ, և Մկրտիչ իւր պաշտօնը շարունակեց մինչև 1381 (ԲԱՌ. 46): Աղթամարի աթոռն ալ նախանձելի վիճակ մը չունէր, թէպէտ յատկապէս հալածեալ ալ չէր: Քանի մը հազիւ անունով ծանօթ կաթողիկոսներէ ետք, աթոռի վրայ կը գտնուէր Ներսէս Ս. Փոլատ, որուն օրով հազիւ 15 միաբաններ կը գտնուէին աթոռը, գրեթէ անօգնական մնացած, ինչպէս յիշատակարան մը կը գրէ, թէ ոչ է ծուլացեալքն տանուան և ոչ յայլոց, այլ գրեա եսա շինարեանցն այլոց տան, և բազում աշխատանօք և չարչարանօք ընթերցաք կերակրեցն պարտապեն (ՕՕ. ԲԻՁ. 1194): Ներսէսի կաթողիկոսութիւնը տևած է մինչև 1378, և իրեն յաջորդած է Զաքարիա մարտիրոսը, որուն վրայ իւր կարգին պիտի խօսինք: Մէկ խօսքով՝ խեղճութեան և տառապանաց շրջան մըն էր որ կը բոլորուէր ամէն կողմ:

---

# Տ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Ե. ՍՍԵՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐ**

1329. Մեսրոպի յաջորդին ընտրութիւնը չէր կրնար շատ հանդիսական և կանոնական ձևերով կատարուիլ, նկատելով այն տաղնապալից կացութիւնը որ կը տիրէր, և երբ Սիս քաղաք հազիւ թէ կրնար դուրսերուն հետ յարաբերութիւն պահել: Կոստանդին Հեթումեան ալ բռնական և բռնապետական իշխանութիւն կը վարէր, և կրնար իւր կամքով գործը վերջացնել, և առձեռն պատրաստ մէկ մը՝ անմիջապէս կաթողիկոս օծել տալ, աթոռը պարապ չթողլու և կաթողիկոսական ազդեցութիւնը չկորսնցնելու համար: Կոստանդինի նախընթացին վրայ որևէ տեղեկութիւն տրուած չլինելով, իրաւունք կը կարծենք ունենալ, նոյնացնելով զայն Կոստանդին եպիսկոպոսին հետ, որ յիշուած է Մխիթարի ժողովին ներկաներուն մէջ, անթեմ կամ դրան եպիսկոպոսներու կարգին (§ 1291), և այդ հիմամբ կը պատշաճեցնենք իրեն Սսեցի մակդիրանունը: Մեր կազմած մերձեցուցման կը նպաստէ Կոստանդինի Սսոյ մէջ գտնուիլը, երբ յարաբերութիւնները դժուարացած էին, և անոր շատ հակիրճ պաշտօնավարութիւնը, հազիւ երկու տարի, որ ծեր ըլլալուն նշան մըն է, ինչպէս պէտք էր ըլլար 1342'է առաջ եպիսկոպոս գտնուող մէկ մը: Կոստանդինի ուղղութեան և ընթացքին վրայ ալ շատ բաներ չունինք, զայն իբրև Մխիթարի նախկին գործակից մը նկատելով, կրնանք ըսել թէ Արևմուտքի օգնութեան հետամուտ, և բոլոր յոյսը Արևմուտքի վըրայ դնող մըն էր, և այս տեսակէտէն Լուսինեանց ալ համակիր:

**ԼԵՒՈՆԻ ՀՐԱՒԷՐ**

1330. Նշանակելի է Կոստանդինի կաթողիկոսութեան սկիզբները Լուսինեան կուսակցութեան աւելի առաջ գտնելը, Կոստանդին Հեթումեանը արքունական գահէն վար առնելու, և Լևոն Զիւանեանը անոր տեղ թագաւորեցնելու գաղափարը յղանա-

լու չափ։ Այս միտքով պատգամաւորութիւն մըն ալ ղրկուեցաւ Կիպրոս, յանուն ազգին նէրում ալ հայցելով Գուիտոնի և Պէմունդի և Լատին ասպետներուն սպանութեան համար, սակայն Լեւոն իսկեւիսկ չհամակերպեցաւ, և չուզեց առանց իր որբամադրութեան ներքեւ զօրաւոր գունդ մը ունենալու Կիլիկիա անցնիլ, և Հայ իշխաններուն և գունդերուն ազդեցութեան ներքեւ մնալ։ Իր խոստովանահայր պատմիչն ալ կը վկայէ, թէ կը վախնար որ ողջունէին զնա Հայք ընդ ձեռամբ Լատինաց, վարելով ընդ կամս անձանց (ԴԱՐ. 67)։ Այդ մտածութեանց մէջ, որոշակի կը տեսնուի կրօնական խնդիրին ալ նկատի առնուած ըլլալը։ Նզրեցի Կոստանդիններու օրով հոռմէականութեան հակումը շատ տկարացած էր, մինչ Լեւոն՝ ջերմեռանդ հռոմէադաւան մը, կ՚ուզէր Հայերը իր ուղղութեան ստիպելու չափ ոյժ ունենալ։

1331. Պարագաները չուտով ծանրացան և խնդիրին լուծումը գահավիժեցին։

**ՀԵԹՈՒՄԵԱՆ ՍՊԱՆՈՒԱԾ**

Մանչակ ամիրայ Տարսոնի՝ նոր սպառակ մը հանեց Սօս, կողմերը, և քաղաքն ալ նեղի դրաւ։ Կոստանդին Հեթումեան բոլորովին յուսահատ և իր կեանքին վրայ վախցող, մտածեց հարստութիւնները մէկտեղ առնելով խոյս տալ, և Սիսէ փախչելով Կիպրոս ապաւինիլ, բայց այս խորհուրդին գործադրութիւնը անհնար գտաւ, որովհետեւ Սիսէ դէպի ծովեզերք ամէն տեղեր Եգիպտացիներէն գրաւուած էին և անվտանգ անցնիլ յուսալի չէր։ Այն ատեն մտածեց թշնամիին հետ համաձայնութեան մտնել, Սիսը կամ Կիլիկիան անոր յանձնել, միայն թէ իր կեանքը ապահովուի, և իրեն ներուի Կիպրոս երթալ իր հարստութիւններով։ Խորհուրդը յայտնուեցաւ, և դայրոյթը ընդհանուր եղաւ։ Կոստանդին արդէն իր բռնութիւններով ժողովուրդը զզուեցուցած էր, մատնութեան յայտնուելովը իրեն պաշտպաններն ալ կորսնցուց, դաւաճանութիւնը դաւաճանութեամբ ընկճելու միտքը զօրացաւ, և Կոստանդին սպանուեցաւ 1373 ապրիլին (ԴԱՐ. 68)։ Լուսինեան կուսակցութեան յաղթանակն էր եղածը, և անիկայ տիրացաւ կացութեան, և մինչեւ նոր թագաւորի մը հաստատութիւնը Մարիամ թագուհի (§ 1326) խնամակալ կամ թագապահ հռչակուեցաւ, և իրեն քաղաքական և զինուորական օգնականներ նշանակուեցան Գուիտոնի եղբօր Պէմունդ կոմսին անհարազատ զաւակը Բարթողիմէոս ասպետ, և Թորոս մարաջախտին որդին Վասիլ զօրավար։ Իսկ թագաւորութեան յաջորդին համար շատ վարանելու տեղի չէր մնար, Լուսինեան կուսակցութիւնը արդէն տարի առաջ իր ընտրութիւնը ըրած էր (§ 1320), և թագաւորի մահը ապահովցուցած էր արքունական գահը։

1332. Համաձայնութիւնը շուտով գոյացաւ, Կոստանդին կաթողիկոս ալ միացաւ, պաշտօնական գիրեր պատրաստուեցան և կընքուեցան, և Լեւոն Համուսցի սեպուհ և երկու

**ԼԵՒՈՆ ԹԱԳԱՒՈՐ**

Սսեցի տանուտէրներ պատգամաւոր նշանակուեցան՝ Լեւոն Ջիւանեանը Կիպրոսէ Սիս առաջնորդելու։ Ասոնք ներկայացան նախ Պետրոս Բ թագաւորին, որ 13 տարեկան եղած էր, և գործերը կը վարէր իր հօրեղբօր Անտիոքայ իշխանի անունը կրող Յովհաննէս Լուսինեանի խնամակալութեամբ։ Իսկ Լեւոն Ջիւանեան, արդէն 31 տարեկան եղած, Կիպրոսի բանակին մէջ զօրավար մըն էր, և Կիպրոսի թագաւորին հաւանութեան հետ օգնութեանն ալ պէտք ունէր, իր գործը յաջողցնելու համար։ Պատգամաւորութիւնը Լեւոնի ալ ներկայացաւ, և օր եռքը հաւանութեան պատասխան ալ ստացաւ, բայց ոչ նոյնժամայն գործադրութեան, զի Կիպրացիք պատերազմի մէջ էին Գենուացւոց դէմ, և Լեւոնի ներկայութիւնը անհրաժեշտ էր Կիպրացւոց յաջողութեան համար։ Ուստի թագաւորն ու խնամակալն յայտարարեցին թէ միայն պատերազմին վերջանալէն ետքը Լեւոն կրնայ Կիպրոսէ մեկնիլ, և այն ատեն պէտք եղած օգնութիւններն ալ իրեն կը տրուին (ԴԱՐ. 76)։ Լեւոնի յայտարարութեանց մէջ յատկապէս չեշտուած է, է պահպանութեան նորոգելէ հաստոց պայմանը (ԴԱՐ. 74), այսինքն թէ հռոմէականութիւնը պաշտպանելու համար Հայոց թագաւորութեան յանձնառու կ՚ըլ-

լայ, սակայն պատգամաւորներ չատ մտադրութիւն չդարձուցին այդ պայմանին, և յօժարակամայ կամս հաւանեցան իրենց խնդրանքին յետաձգման։

**ՏԵՂԱԿԱԼՆԵՐՈՒ ԱՏԵՆ**

**1333.** Թանի որ Լեւոն այդ վայրկեանէն պաշտօնապէս Հայոց թագաւոր եղած կը նկատուէր, ինքն ուրկց առժամապէս երկիրը կառավարելու սահմանուած տեղակալները, որոնք եղեն դարձեալ կանխաւ նշանակուած խնամակալները, Մարիամ թագուհին և Բարթողիմէոս Լուսինեան ու Վասիլ Թորոսեան իշխանները (§ 1331), անոնց վրայ աւելցնելով Ռէմի կոմսուհին՝ Լուսինեան Պէմունդի այրին։ Այս չորսերուն օգնական տրուեցան Կոստանդ զինակիր, և Մանուէլ թարգման, այս վերջինս Իտալիոյ պատգամաւորութենէն (§ 1326) Կիպրոս դարձած։ Սիսէ եկող պատգամաւորները, և յիշեալ զինակիրն ու թարգմանը Քերինէ նաւահանգիստէն յատուկ նաւով Կոռիկոս անցան, բայց իմանալով որ Սիս քաղաք Հալէպի ամիրայ Պէկ-Թիմուրի կողմէ պաշարուած է, պարտաւորուեցան Ճանդերճի Թուրքաց հագնիլ և Չեփքեան քալելով առանց ճանչցուելու Սիս մտնել։ Պատգամաւորութեան բերած խոստմնալից աւետիսը Սսեցիները ոգեւորեց, Լեւոնի դրօշը ամրոցին վրայ կանգնուեցաւ, ամէնքը զինուեցան, և անվեհեր յարձակումով պաշարողները ցրուեցին (ԴԱՐ. 80)։ Այդ եղելութեանց ալ որոշ ամսաթիւը նշանակուած չենք գտներ. բայց նկատելով որ Կոստանդին Հեթումեանի սպանութիւնը 1373 ապրիլին էր եղած (ԴԱՐ. 68), մերձաւորաբար երեք չորս ամսուան ժամանակ հարկ կը զգանք տալ պատմուած եղելութեանց, և 1373 սեպտեմբերին դնել Լեւոնի թագաւորութեան հռչակուիլը և Պէկ-Թիմուրի պաշարումին ետ մղուիլը։ Անկէ մինչեւ Լեւոնի անձամբ Սիս հասնելը 10 ամիսներ անցան, բայց որոշակի դիպուած մը կամ նշանակելի եղելութիւն մը պահած չէ պատմութիւնը։ Կ'երեւի թէ Եգիպտացիներ պահ մը հանդարտեցան վերահաս ձմեռուան պատճառաւ, և Սիսի մէջ ալ ներքին խնդիրները դադրեցան նոր թագաւորին օրէցօր հասնելուն ակնկալութեամբ։ Կոստանդին կաթողիկոսն ալ հանդարտ օրեր անցուց, համակերպելով կատարուած եղելութեանց և առիթ չունենալով նոր խնդիրներ յուզելու՝ իր տարիքին ալ հետեւանօք, ինչպէս հաչուեցինք (§ 1329)։

**ԼԵՒՈՆԻ ԳԱԼՈՒՍՏԸ**

**1334.** Անդին՝ Լեւոն Գենուացւոց հետ պատերազմին հետեւանքներով նոր արկածներու հանդիպեցաւ։ Գենուացիք մեծ ոյժերով Ֆամագոստա նաւահանգիստը պաշարեցին և գրաւեցին, և Կիպրացիք տեղի տուին։ Պետրոս Ա.'ի սպանութեան վրայ քննութիւն բացին, և ուրիշ կասկածաւորներու հետ Լեւոնն ալ բանտարկեցին, որ Պետրոսի այրիին Էլէոնորա թագուհւոյն միջնորդութեամբ Գենուացւոց ծովակալին դիմաց ինքզինքը արդարացնելու, Հայոց թագաւորութեան կոչուած, Ուրբանոսի կոնդակով հաստատուած, և մեկնելու վրայ ըլլալն ալ յայտնելով։ Վերջապէս Գենուացիք զիջան, բայց 36,000 Կիպրոսի արծաթ դահեկան տուգանք պահանջեցին։ Լեւոնի մայրը Սուլթան տիկին և ամուսինը Մարգարիտ տիկին հազիւ 6000 դահեկան ճարեցին, ու 30,000'ի փոխարէն Մարգարիտի աւստական կալուածը հաչուեցին, և այնպէս Լեւոն բանտէն արձակուեցաւ։ Կիպրոսէ Կոռիկոս անցնելու համար ալ Լեւոն պարտաւորուեցաւ Էլէոնորայի թողուլ իւր կնոջ Մարգարիտի ուրիշ մէկ կալուածը և երդնուլ թէ Կոռիկոսի բերդաքաղաքը պիտի չմտնէ, և Գենուացի ծովակալին խոստացաւ 10,000 ֆիօրին վճարել իբր վարձ, և 300 տուկատ եւս իւր կարասիները գրաւումէ ազատելու համար։ Այդ ամէն գործողութիւններ երկար ամիսներ տեւեցին, և հազիւ 1874'ին զատկին օրը, ապրիլ 2'ին, կրցաւ Լեւոն Կոռիկոս հասնիլ իրեն հետ ունենալով մայրն ու կինը ու հետեւորդները (ԴԱՐ. 89), զորս չէր կրնար այլեւս Կիպրոսի մէջ թողուլ։ Կոռիկոս հասնելով, Լեւոն բուն քաղաքը չմտաւ, և փոքրիկ կղզեակին մէջ բնակեցաւ, և որչափ ալ Կիլիկիա հասած էր, բայց տակաւին իւր թագաւորութեան մէջ չէր, զի Կոռիկոս Կիպրացւոց անցած էր (§ 1323), և այդ միջոցին Գենուացիք կ'իշխէին, ու անկէ մին-

չեւ Սիս ութ օրուան ճանապարհէն աւելի էր (ԴԱՐ. 87), և միջանկեալ երկիրն ալ Տարսոնի ամիրային ձեռքն էր։

ԿՈՍՏԱՆԴԻՆԻ ՄԱՀԸ

**1335.** Կոստանդին կաթողիկոս հաւանաբար կրցաւ լսել սպասուած թագաւորին Կիլիկիա համնիլը, բայց չկրցաւ զայն տեսնել։ Մահը կանխեց այդ մխիթարութիւնը իրեն զլանալ, թէպէտ ինքն ալ մասնակցած էր գործին, և Կիպրոս գացող պատգամաւորներ յատկապէս կաթողիկոսի անունն ալ յիշած էին, թէ Պետրոսի (ԴԱՐ. 69), և թէ Լեւոնի առջեւ (ԴԱՐ. 70)։ Կոստանդինի կաթողիկոսութիւնը տեւողութեամբ յոյժ համառօտ, կարեւորութեամբ ալ աննշանակ անցաւ, արդիւնաւորութեան հետք մը չենք տեսներ իր վրան, և միայն տագնապալի և ազգին ճակատագիրին հետ շատ նշանակելի օրերու հետ կապուած կը մնայ իր անունը, առանց յատուկ նշանակութիւն մը ունենալու, ոչ լաւ և ոչ վատ տեսակէտով։

# Տ. ՊՕՂՈՍ Ա. ՍՍԵՑԻ

ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԾԱԳՈՒՄ

**1336.** Պօղոսի ընտրութիւնը կատարուեցաւ Լեւոնի Կոռիկոս համնելէն քիչ առաջ կամ ետքը, թագաւորութեան չորս տեղակալներուն պաշտօնավարութեան միջոցին և անոնց ազդեցութեամբ, այլ թէ ո՛վ էր Պօղոս, ի՞նչ էր իր նախընթացը, և ո՞ր արժանիքովը կաթողիկոսութեան բարձրացաւ, մեզի համար մթութեան մէջ կը մնան։ Ծննդավայրն ալ կը մնայ անծանօթ, և Սսեցի մակդիր անունը յարմար տեսած ենք իրեն, հայրապետական աթոռանիստ քաղաքէն, և նոյն քաղաքին մէջ գտնուելէն, զի հարկաւ դժուար էր հեռուէն կաթողիկոս ընտրել և հաստատել։ Մենք անհրաժեշտ դատած ենք, իւրաքանչիւր հայրապետի մակդիր անուն մը գործածել, վասն զի կարգի թուահամարը, որով սովոր են յիշուիլ գահակալներ և աթոռակալներ, հին ատեններ գործածական չէ եղած, և նորերուն ալ կազմածները իրարու անյարմար են, և հնար չէ իբրեւ որոշիչ յատկանիշ կամ յատուկ անուն մը ճանչնալ կարգի թուահամարները։ Այսպէս նոյն ինքն Լեւոն Ջիւանեանը, որուն վրայ կը խօսինք, ոմանց համար Լեւոն Զ է, մինչ ուրիշներէն Լեւոն Ե կը կոչուի։ Նոյնպէս իրենց կարգին դիտել տուած ենք Յովհաննէս և Կոստանդին կաթողիկոսներու թուահամարները։ Այս պատճառով պատմութեանս մէջ ալ շատ մտադրութիւն չենք դարձուցած թուահամարով յիշելու մեր կաթողիկոսներն ու թագաւորները։ Պօղոս կաթողիկոս ակնկալութեանց միջոցին պաշտօնի անցաւ՝ կարծելով թերեւս Լեւոնի համնելովը վտանգեալ թագաւորութեան բախտը լաւին դարձած տեսնել, և յուսալով որ Հայ ազգութիւնն ու Հայ եկեղեցին իրենց վտանգալից տագնապէն ազատելով, պիտի կարենան նորէն կենդանանալ՝ իրենց կատարեալ իսկութեամբ և ապահովեալ ինքնութեամբ։ Պօղոս իւր գործերովը զգացման և գաղափարի տէր անձ մը կը ներկայանայ, լաւագոյն պարագաներու մէջ արդիւնաւոր գործունէութիւն վարելու կարող։ Դժբախտաբար այնպիսի օրերու մէջ աթոռ բարձրացաւ, որ պարտաւորուեցաւ կործանման լրումը տեսնել, և ազգային իշխանութեան և ընիկ թագաւորութեան վերջանալուն ականատես վկան ըլլալ, պաշտօնական դեր ալ վարելու ստիպուած ըլլալով։

ԼԵՒՈՆԻ ՀԱՍՆԻԼԸ

**1337.** Լեւոն Կոռիկոս համնելուն պէս չփութաց ուղեւորել դէպի Սիս. արդէն Կիպրոս եղած ատեն բսած էր, թէ Հարկ էր [illegible] ի Կոռիկոս (ԴԱՐ. 89)։ Այս միտքը թերեւս մերձաւոր ձմեռուան համար էր, բայց գարունին հասած ըլլալով ալ կղզեակին մէջ մնաց, յանդուգն ձեռնարկի մը ծրագիրով, այն է Տարսոնի տիրանալ, ուր միայն 300 զին-

ւորներ ունէին Եգիպտացիները, իսկ բնակիչքն համօրէն էին Հայք քրիստոնեայք (ԴԻԱՐ. 90): Հազար հոգիի գունդ մը ուղեց կազմել՝ բայց չյաջողեցաւ, Գէնուացիներէն նաւեր ուզեց՝ բայց զլացուեցան, իր գաղտնի խորհուրդը Կոռիկոսի բերդակալին յայտնեց՝ որ Տարսոնի ամիրային լուր տուաւ, վերջապէս Կիպրոսէ զինուորներ ուզեց մինչեւ Սիս ընկերանալու համար՝ և այս, անգամ մը ամբաստանուեցաւ թէ, Գէնուացւոց դէմ Կիպրոս արշաւելու կը պատրաստուի: Գէնուացիք անմիջապէս երկու ցականաւ ճամբայ հանեցին Լեւոնը ձերբակալելու և ետ բերելու, որով Լեւոնի հարկ եղաւ շտապել և գիշերախառն փախչիլ ու հեռանալ, Կոռիկոսի Հայ եպիսկոպոսին և Հայ զինուորներուն միջնորդութեամբ, և Տարսոն չի հանդիպելու երդումով: Երկու նաւեր ճարեց, մայրն ու կինը քանի մը հետեւորդներով Կոռիկոսի բերդը զրկեց, անկէ ալ այս ինչ օր՝ այս ինչ տեղ երթալ ու հոն սպասել հրամայեց (ԴԻԱՐ. 97): Ինքն ալ գիշերուան մութին չորս հոգիով նաւ մը մտաւ ու գաղտ մեկնեցաւ, և առաւօտուն իր զինակիրն Սոհիէ Դուլկարտ միւս նաւին՝ մէջ մտաւ 25 աղեղնաւորներով և 25 հեծեալներով, և իրարու միացան, Կոռիկոսէ 30 փարսախ հեռու Գօնզալայա ծոցը (ԴԻԱՐ. 98): Արեւ մտնելէն ետքը անկէ մեկնեցան՝ հեծեալներու և աղեղնաւորներու և երկու ուղեցոյցներու ընկերակցութեամբ, բայց շտապելու համար հետի աղեղնաւորները ետեւ թողուցին մէկ ուղեցոյցով, և միւս ուղեցոյցին հետ ու միայն հեծեալներով երկուս տէրս և երկուս քէշէրս ասանց իջանելոյ յերէկորոյ, արշաւասոյր վազքով (ԴԻԱՐ. 99) Սիս հասան 1374 յուլիս 26'ին (ԴԻԱՐ. 112), և քաղաքէն երեք փարսախ հեռու հանգիստ առին: Ցանկարծական լուրը քաղաքը գրգռեց: Պօղոս կաթողիկոս, զոր Հայք ունէին իբրև շղթայն աշխարհին (ԴԻԱՐ. 99), բոլոր եպիսկոպոսներ ու վարդապետներ, և քաղաքին մեծամեծք և քաջատոհմք, արք և կանայք, և բազմամբոխն երամշտաց պէսպէս նահատակաց զինուորելու վազեցին, և մեծ հանդէսով քաղաք առաջնորդեցին, և նորէն ողեւորուեցան, մինչ բոլորովին շուարած, և Լեւոնին գալէն ալ յուսահատած, անձնատուր լինելու միտքեր կ'օրոճային: Միւս օրը յուլիս 27'ին հաւատարմութեան երդումը կատարուեցաւ, և չորրորդ օրը յուլիս 29'ին, 150 Հայ հեծեալներ ճամբայ ելան Լեւոնի մայրն ու կինը և հետեւորդները բերելու, և ողջամբ Սիս հասուցին (ԴԻԱՐ. 102): Անկէ ետքը Լեւոնին առաջին գործը եղաւ իր տեղակալներէն հաշիւ առնել, պահանջելով առաջին թագաւորներէն մնացած գանձերը, և տեղակալութեան միջոցին գանձուած գումարները: Բայց սղասուած քանակը չգտնելով սկսաւ նեղել չորս տեղակալները, որ էին Մարիամ ու Ռէմի տիկիններ, և Բարթողիմէոս ու Վասիլ իշխաններ: Անոնք չփոթ պարագաներուն երեւէն մեծամեծ ծախքեր ըրած ըլլալնին պատճառեցին, բայց Լեւոն չգոհանալով, խոստովանահայրները մտցուց գործին մէջ (ԴԻԱՐ. 107), եկեղեցականներն ու աւագանին ժողովի գումարեց, Վասիլ Թորոսեանն ու Կոստանդին Հեթումեանի այրին բանտարկեց, խիստ հարցափորձի ենթարկեց, բայց նիւթական արդիւնք մը չկրցաւ ձեռք ձգել, և իբր ներելով գործը փակեց (ԴԻԱՐ. 111):

1338. Կարգը եկաւ թագաւորական օծման հանդէսը կատարելու, և Հայերը կը պահանջէին, որ նախնի

ՕԾՈՒՄԻ ԽՆԴԻՐԸ

թագաւորներու սովորութեան համեմատ կաթողիկոսը կատարէ զայն: Լեւոն բացարձակապէս մերժեց Հայերուն առաջարկը, յայտարարելով թէ մեք ծնեալք եմք եկեղեցւոյն Հռոմայ, և ունիմք շնորհագիրս ճշմարիտս, զոր պարտ է և յետ ունել, ուստի կը պնդէր թէ չկրնար Հայոց միւռոնով Հայոց կաթողիկոսէն օծուիլ, և այս պատճառով՝ մէկտեղ բերած է Ներբոնի լատին եպիսկոպոսը Փրանկիսկեանց միաբանութենէն, որ և եբեր ընդ իւր ի Կիպրոսէ զնորին օրհնութեան. և իբր փաստ կ'աւելցնէր, որ եթէ պապը լսէ որ Հայոց միւռոնով օծուած է, այլ եւս օգնութիւն չղրկեր: Հայեր չէին կրնար հաւանիլ այդ յայտարարութեանց, ուստի քրիստոնէին ընդ այն զի ոչ կամէր դառնալ ընդ նոցայն օրէնք (ԴԻԱՐ. 113): Լեւոն տեսնելով որ գործը կրնայ տգեղ հետեւանքի մը յանգիլ, իբրեւ մեծ շնորհ և իբրեւ վերջնական

զիջում հաւանեցաւ, որ Ներրոնի եպիսկոպոսը և Հայոց կաթողիկոսը զատ զատ պատարագեն, և արարողութեան ատեն Լատին եպիսկոպոսը աջ կողմը կենալով, նախ օծէ և կարգը լրացնէ, ու վերջէն Հայ կաթողիկոսը ձախ կողմը կենալով ինքն ալ օծումը ընէ։ Երբոր Լեւոն վերջնականապէս պնդեց, թէ այս ձեւէն զատ, [illegible], Հայերը ստիպուեցան հաւանիլ, բայց չենք կարծեր թէ [illegible], ինչպէս կ'ուզէ հաստատել Լեւոնի լատին գովաբանը (ԴԱՐ. 114)։ Հանդէսը տեղի ունեցաւ Ս. Սոփիա մայր եկեղեցւոյն մէջ 1374 սեպտեմբեր 14ին, Խաչի Վերացման տօնին օրը, այն ալ լատին ծէսով, որովհետեւ օրը հինգշաբթի եղած է այն տարին և Խաչվերացի կիրակին 17ին կ'իյնար։ Թագադրութիւնը կատարուած է Մարգարիտ թագուհւոյն վրայ ալ հաւասարապէս, իսկ շնորհաւորութիւնը եղած է միայն Սոփիէ Դուքարա և Մատթէոս Շապալ լատին ապեղաներուն։ Առաջինը մարաջախտ անուանուած և Լեւոնի հօրեղբօր այրիին, Օշինի կնոջ հետ ամուսնացած է, և երկրորդը դիւանապետ անուանուած ու Կոստանդին Չեթումեանի այրիին հետ ամուսնացած է։ Օծման խնդիրը, եթէ մէկ կողմէն կը յայտնէ Հայ եկեղեցւոյն և Հայ ազգին նկատմամբ Լեւոնի տածած աննպաստ և անարգական զգացումները, միւս կողմէն կը հաստատէ, թէ Կիլիկիոյ Հայութիւնը համեմատականութեան չէր հետեւած, և կաթողիկոսն ու եկեղեցականութիւնն ալ լատինամոլներ չէին եղած, ինչպէս ոմանք կը սիրեն ըսել։ Նոյն պարագային լուսաւոր կերպով կը մեկնէ այն հակակրութիւնն ու պաղութիւնը, որ այս վայրկեանէն սկսած է ցուցուիլ Հայոց կողմէ Լեւոնին հանդէպ, որովհետեւ Լեւոնի նպատակն եղած է, ոչ թէ Հայոց թագաւորութիւնն ու եկեղեցին պաշտպանել, այլ ինչպէս ինքն իսկ յայտարարած է, եկած է [illegible] (ԴԱՐ. 108) համեմատականութեան տեսակէտով։ Ըստ այսմ եթէ Լեւոնի գալուստը օգուտ մը չունեցաւ Հայոց թագաւորութեան, և եթէ կերպով մը փութացուց անոր վերջնական կործանումը, նորէն լատինութեան խնդիրը պէտք է ճանչնանք իբր անոր պատճառ։

**ՆՈՐ ՅԱՐՁԱԿՈՒՄՆԵՐ**

1339. Հայոց թագաւորութեան այն օրերու կացութիւնը իմանալու համար բաւական ըլլայ գիտնալ, թէ Եգիպտացիները կ'ասպատակէին [illegible], թէ Սսեցիք 8 տարի, իմեր [illegible], և այս պատճառով թշնամիներուն [illegible] (ԴԱՐ. 115)։ Լեւոն ալ կ'առաջարկէ դարձեալ վճարումները շարունակել, բայց Տաճատ զօրավար, Լեւոնի պատգամաւորները կը բանտարկէ, և նպարներու տարուած կ'արգելու, ինչ որ Դարդէլի պատմելով յառաջ եկած է Սսեցիներէն ոմանց երկու կողմերու տարբեր քաղութիւններ ընելէն և հակառակութիւնք արծարծելէն։ Իրաւ պատմիչը որոշ փաստ մը չցուցներ իր կասկածի հաստատելու, բայց անհնար չէ որ Լեւոնի Հայոց դէմ ըրած նախատինքը՝ ոմանց նախանձայուզութիւնը զրգռած ըլլայ։ Լեւոն քաղաքէն դուրս յարձակում մը կը կարգադրէ, իւրաքանչիւրին կարգած տարր իրեն թողլու պայմանով, ինչ որ յաջողութեամբ կը սկսուի, բայց Տաճատ պաշարումը կը սաստկացնէ 12,000 հոգւոյ բանակով, և երեք ամիս նեղը կը դնէ քաղաքը, մինչեւ որ Լեւոն կը զիջանի հարկ վճարել, և Տաճատ պաշարի ներքածումը դիւրացնէ (ԴԱՐ. 118)։ Այդ եղելութիւններով անցաւ 1374 սեպտեմբերէ դեկտեմբեր միջոցը։ Եգիպտացի սուլտանը որ միայն դէր էր Հայոց թագաւորութիւնը վերջացնել, մանաւանդ Լատինի մը անոր գլուխն անցնելէն ետքը, նոր արշաւանք մը կազմակերպեց Ապուպէքիր զօրավարի հրամանատարութեամբ, և 15,000 զօրաց բանակով, որ 1375 յունուար 5ին վերջնապէս սկսաւ պաշարումը, և Աստուածայայտնութեան նախընթաց գիշերը խափանեց ամէն յարաբերութիւնները։ Այսպէս ալ լատին պատմիչ մատնութեանց մեղադրանքներ կը բարդէ Հայերուն վրայ, թէ նոր արշաւանքը որոշուած ըլլայ Փանէր՝ զանազան հաւատափոխ Աշոտ Նարեկցի իշխանին թելադրութեամբ, և Սիսէ անոր եղած զինուո-

*ներուն վրայ, և թէ Լեւոնի կողմէ Ապուպէքիրի հետ բանակցութեան դրկուող Վահրամ իշխանը, իրեն տրուած հրահանգներուն հակառակ խօսած ըլլայ։ Որչափ ալ այդ պարագաները միայն կասկածներու վրայ հիմնուելով պատմուած ըլլան, սակայն ակներեւ է Լեւոնի և Սսոյ Հայերուն մէջ աճած հակակրութիւնը։ Տեսանք օծման առթիւ Հայոց զգացումները վիրաւորող ընթացքը, դիւրին է ենթադրել, թէ յաջորդ ամիսներուն մէջ ալ, նորանոր վիրաւորանքի առիթներ տրուած են Լեւոնի կողմէ։ Սիսի բնակիչները կրնային մոռնալ, թէ ազգային իշխանութեան վերջին մնացորդը, որ այլեւս դուռերը փակուած բերդի մը պարիսպներուն մէջ կ'ամփոփուէր, չէր արժեր մոլեռանդ Լատինի մը իրենց ազգութեան և եկեղեցւոյն դէմ արհամարհանքները։ Խնդիրը ոչ եւս վերացական վիճակին մէջ, այլ ծանրացեալ պարագաներուն ներքեւ պէտք է նկատել, երբ կեանքի պարէնին պակսելուն վրայ զգացումի վիրաւորանքներ կ'աւելնային, և երբ Սսոյ բերդաքաղաքը ոչ եւս Հայութեան այլ լատինականութեան ապաստանարան կ'ըմբռնուէր։ Միւս կողմէն դիւրին է համոզուիլ, թէ քանի մը հարիւր տարիներէ իվեր արեւմտեան քրիստոնէութեան դէմ պատերազմող իսլամական սուլտանութիւնը, ոչ Աշոտի մը յորդորներուն և ոչ Վահրամի մը խօսքերուն պէտք ունէր իւր նպատակը յառաջ վարելու համար։*

**ՀԱՅՈՑ ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆԸ**

**1340**. *Ապուպէքիրի կարգադրած պաշարումը, և պարբերական յարձակումները, տակաւին չկքուցին Սսոյ մէջ եղողները, որոնք* խաչաբերամբ դժէմ անէին *ինչպէս Դարդէլ ալ կը խոստովանի* (ԴԱՐ. 124), *այլ հետզհետէ կրած կորուստին, և դիմադրութեան միջոցներու նուազութիւնը, պաշտպանութիւնը անհնարութեան հասուցած էին։ Լեւոն հրամայեց որ բոլոր բնակիչները միջնաբերդի մէջ քաշուին, և քաղաքին բնակութեան մասը կրակ տալով աւերեց, և Ներսէսի լատին եպիսկոպոսին ձեռքը աւետարան մը տալով, ամէնքը նորէն երդուրնցուց, կաթողիկոսն ու եպիսկոպոսներն ու եկեղեցականներն ալ միասին, իրեն հաւատարիմ մնալ, և մինչեւ ցմահ պատերազմիլ* (ԴԱՐ. 125)։ *Դարդէլի պատմելով, կաթողիկոսն ու եպիսկոպոսներ ու իշխաններ կանուխէն գաղտնի յարաբերութեան մէջ էին Հալէպի ամիրայ Մելէքի ձեռքը անձնատուր ըլլալու, եթէ ինքն անձամբ ներկայանար, և թէ այս պատճառով Մելէք* 15,000'*ի նոր բանակով Սիս հասած էր* 1375 *փետրուար* 24'*ին* (ԴԱՐ. 124)։ *Բայց նոյնինքն Դարդէլ է որ կը վկայէ, թէ փետրուար* 25'*ին յարձակումը ետ մղողները բերդապահ Հայերն են եղած, Լեւոնի բերած* 50 *զինուորներուն հետ միասին։ Այս պատերազմին մէջ է որ Լեւոն ծնօտէն վիրաւորուած և երեք ակռայ կորսնցուցած է թշնամիներուն վրգահանէն փրթած երկաթի կտորի հարուածով, և պարտաւորուած է մահիճ իյնալ ներքին աշտարակին մէջ։ Այդ պատերազմին միջոցին պէտք է դնել նաեւ Կեջեղակ վարդապետի մը սպանուիլը, որուն համար ըսուած է թէ* ֆրերոց աշակերտ էր (ՍԱՄ. 170), *և հարկաւ նշանաւոր անձ մը եղած է, որ անունը աւանդութեամբ պահուեր է։ Յաջորդ օրերուն մէջ Մելէք չարունակեց յարձակումները առանց վերջնական յաջողութեան, Լեւոնին ալ առաջարկեց անձնատուր ըլլալ և ամենայն պատուով և դիւրութեամբ իւր երկիրը դառնալ իրեն մարդիկներով, կամ եթէ ուզէ, իսլամութիւն ընդունիլ և սպարապետի աստիճանով սուլտանին ծառայութեան մտնել։ Լեւոն մերժեց, բերդապահներն ալ դիմադրութեան քաջալերեց, սակայն ուրիշ դժուարութեանց վրայ, պաշարի նուազութիւն ու սով ալ սկսած էր տիրել բերդին մէջ* (ԴԱՐ. 129)։

**ԼԱՏԻՆՆԵՐՈՒ ԴԱՒԸ**

**1341**. *Ասոր վրայ դիմադրութեան անօգուտ լինելուն Լատիններն ալ համոզուեցան, և գաղտնապէս Մելէքի լուր հասուցին անձնատուր ըլլալու պատրաստականութիւննին յայտնելով, մինչեւ իսկ Լեւոնն ալ սպաննելու մտադրութեամբ, եթէ իրենց չհաւանի։ Այդ շարժումին գլուխ եղաւ Մատթէոս Շապպ լատին ասպետը։ Դարդէլ կը կարծէ թէ Մատթէոսը մոլորեցնողներն եղած էին իւր կինը, Վասիլ Թորոսեան իշխանը և Պօղոս*

*կաթողիկոսը* (ԴԱՐ. 130), *բայց նոյն իսկ յուսահատ վիճակը, բաւական էր վարձկան ասպետներուն միտքը փոխելու, առանց թելադրութեանց պէտք ունենալու։ Մատթէոս կրցաւ իր կողմը յանկուցանել բոլոր Լատինները, որոնք ամէն բան կարգադրեցին, ու Մարտ 24'ին աշտարակին վրայ յարձակեցան,* զի [illegible] *Իրաւ ալ կոտորեցին* [illegible], *բայց այդ միջոցին երկու Հայ և մի Հոռոմ ասպետներ որ Լեւոնի մօտ կը գտնուէին,* [illegible] *և իրենք ալ ետեւէն իջան, իսկ թագուհին և ուրիշներ այն տեղ մնացին, բայց վնաս չկրեցին։ Աշտարակը դիմադարձ Լատիններուն ձեռքը մնացած էր, երբ թագաւորին դէմ փորձը լսուեցաւ, Սսոյ Հայ ժողովուրդը* [illegible] *Լեւոնի պաշտպանութեան վազեցին,* [illegible], *բայց չյաջողեցան զայն Լատիններուն ձեռքէն առնել։*

**1342.** *Դարդէլ, որ կ'ուզէր Հայերը մատնիչ ու դաւաճան ցուցնել, իւր իսկ վըկայութեամբ կը հերքուի, երբոր ինքն է որ Լատիններու դաւաճանութիւնը և Հայոց հաւատարմութիւնը կը պատմէ։ Լեւոնէ անարգուած և վիրաւորուած Հայերն են, որ նոյն Լեւոնի անձը կը պաշտպանեն իր Լատիններուն դէմ։ Մատթէոս աշտարակէն չուանով իջած առեն ինկած և մեռած էր, ուրիշ լատին մը անոր ետեւէն իջնելով Մելէքին ներկայացաւ աշտարակը յանձնել, բայց ամիրան չվստահացաւ* [illegible], *և քաղաքին ու բերդին բուն տէրը չէին. միայն բերդին մօտեցաւ և տասր հոգի իրեններէն ներս դրկեց, դիտելով աշտարակին մէջ մղուած ընտանի կռիւը։ Այդ միջոցին աշտարակին մէջ մնացած Լեւոնի հաւատարիմներէն ոմանք, նոյն ձեմիշի ծակէն ուստի Լեւոն փախած էր, չուանով վեր առին* [illegible], *որոնք աշտարակին մէջ եղող Լատինները կոտորելով, անոր տիրացան և Լեւոնի դրօշը բարձրացուցին* (ԴԱՐ. 137)։ *Հայեր այդ կերպով իրենց ուղղութիւնը և քաջութիւնը ցուցնելէ ետքը, լուրջ խորհրդակցութեան նստեցան Պօղոս կաթողիկոսի նախագահութեամբ,* [illegible], *կը գրէ Դարդէլ, և որոշեցին թէ հնար չէր այլեւս դիմադրել ու տոկալ, և թէ անձնատուր լինելէ զատ եղանակ չէր մնացած, ինչ ալ ըլլար Լեւոնի միտքն ու նպատակը, Ըստ այսմ ծանուցին Մելէքի, և միւս առտուն բերդին դուռը խորտակելով, զի բանալին Լեւոնի մօտ կը մնար, կաթողիկոսն. և գլխաւոր իշխաններ և եպիսկոպոսներ և քաղաքացիներ Մելէքի ներկայացան և անձնատուր եղան* (ԴԱՐ. 140)։

**ՍԻՍԸ ԱՆՁՆԱՏՈՒՐ**

**1343.** *Լեւոն այլեւս մէկը չունէր իրեն հետ, Լատիններ ապստամբած ու սպանուած էին, և Հայեր իրենց որոշումը տուած էին, ուստի պարտաւորուեցաւ Մելէքի առաջարկին համակերպիլ, և կենաց ապահովութեան երդմնագիր առնելով ինքն ալ անձնատուր ըլլալ, ինչպէս որ ըրաւ, ու պատուաւոր և համակիր ընդունելութիւն գտաւ* (ԴԱՐ. 143)։ *Այդ վերջին եղելութիւններ կատարուեցան 1375 տարւոյ աւագ չարթուան մէջ։ Ցիշատակարան մը ապրիլ 16 ուրբաթ օր կը դնէ, բերդին առումը, որ 1374 սեպտեմբերէն սկսելով պաշարման ներքեւ էր* (ՍԻՍ. 228), *բայց ապրիլ 16'ը երկուշաբթի էր, իսկ ուրբաթը ապրիլ 20, և գրութեան սըխալանք մը յայտնի կը տեսնուի, և անորոշ կը մնայ Սիսի առնուելուն ճիշդ օրը։ Մեր հաշուով պէտք է աւագ երկուշաբթի ապրիլ 16'ին դնել, զի հարկաւ քանի մը օրեր պէտք էին կարգադրութեանց համար, և միւս կողմէ գիտենք, թէ ճիշդ զատկի օրը, ապրիլ 22'ին։ Մելէք Սիսէ մեկնեցաւ, քաղաքին վրայ իւր կողմէ հրամանատար մը թողլով, և իրեն հետ տանելով, Լեւոնը ու թագուհին իրենց զաւակաց հետ, Մարիամ նախկին թագուհին, Սոհիէ Դուլկարտ մարաջախտը իւր Ռեմի կնոջ հետ, Պօղոս կաթողիկոսը, և Հայ իշխաններ և գլխաւոր Սսեցիներ,* [illegible] (ԴԱՐ. 148)։ *Ապրիլ 30'ին Հալէպ հասաւ, բայց դուրսը գիշերեց, մայիս 1'ին մեծահանդէս մուտք կատարելու համար, և ընդագես-*

**ԼԵՒՈՆ ԱՆՁՆԱՏՈՒՐ**

պաններ յոյց Եգիպտոս, յաջողութիւնը ստանալու, և գերի բռնած անձերուն համար սուլտանին կամքը իմանալու։ Այսպէս փակուեցաւ վերջին Լեւոնի թագաւորութիւնը, որ յուլիսէն ապրիլ հազիւ 9 ամիս տեւողութիւն ունեցաւ, և իրեն հետ վերջացաւ նաև Հայոց ազգային իշխանութեան շարքը։

1344. Ազգային պատմութեան համար նշանաւոր հանգրուան մըն է 1375 թուականը, բայց և եկեղեցական տեսակէտէն ալ իւր նշանակութիւնն ունի, քանի որ վերջին

ՀԱՅԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԸ

եղելութեանց մէջ՝ գլխաւոր դերակատար մըն ալ նոյն ինքն Հայոց կաթողիկոս Պօղոսն է։ Լատին կրօնաւոր Յովհաննէս Դարդէլ, Լեւոնի խոստովանահայրն ու գովարանը, իբրեւ ժամանակակից և գիտակից վկայ՝ եղելութեանց համար հեղինակաւոր աղբիւր մըն է, և մենք անոր գրածները քաղեցինք, առանց մտադրութիւն դարձնելու տարբեր պատմութեանց, որոնք յայտնի չէ թէ ուսկից քաղուած են (ՉԱՄ. Գ.356-362)։ Սակայն չենք կրնար անոր հետեւիլ երբոր պարզ խորհրդածութիւններ ու գնահատումներ կը բացատրէ, որոնց մէջ ազդուած է իւր պաշտպանած անձը և իւր դաւանած եկեղեցին բարձրացնելու փափաքէն։ Դարդէլի համար Պօղոս կաթողիկոս մատնիչ ու դաւաճան ու ատբաղբուժ անձ մըն է, և բոլոր ձախողութեանց պատճառ է։ Սակայն դժուար չէ Դարդէլի խօսքերուն մէջ տեսնել անոր զայրոյթին բուն պատճառը։ Երբոր կաթողիկոսին անունը տուած ատենը չէզոքական մը կը կրկնէ, Զօր առնէին էբրեա ղողոն ու-խորհէին (ԴԱՐ. 99), կամ Զօր է պատառէ առնէն էբրեա ղողող, օրղէօ մե+ ղուրբաղըն հայրն (ԴԱՐ. 123), կամ Զօր առնէն է պող խորեանց (ԴԱՐ. 138), նովին իսկ կը յայտնէ թէ Պօղոս համբակամութեան մօտիկ մէկը չէր, թէ այդ մասին Լեւոնի համամիտ չէր, թէ կրցածին չափ հայադաւան և հայածէս եկեղեցւոյ պաշտպանութեան կ'աշխատէր, և այս բաւական էր որ Պօղոս կաթողիկոս Դարդէլի համակրութիւնը չվայելէր, և ամէն մեասուց պարտական նկատուէր։ Մենք հաճութեամբ կ'արձանագրենք Դարդէլի վկայութիւնը, թէ 1375'ին Հայերը համեմատաւան չէին եղեր, բայց չենք կրնար հաստատել իւր տեսութիւնները, երբ նա մոլեռանդ համեմատութեան չեզոքեր կ'առնէ։ Ինքն Դարդէլ է որ կը վկայէ, թէ Հայեր Լեւոնի անձնական պաշտպանութեանը ձեռնարկեցին զէնքը ձեռուըներնին և իրենց կեանքին վտանգով, նոյն իսկ Լեւոնի հետեւորդ դաւաճան Լատիններուն դէմ, որով մարդասիրական ու տիրասիրական պարտք մը զգացին կատարել։ Հնար չէ չտեսնել, որ անշուշտ իրենց կաթողիկոսին, իրենց դողէն յորդորներով կը գործէին, ինչ որ Պօղոսի մեծանձն և վեհոգի զգացումներուն փաստն է։ Լեւոն ինքն ալ Դարդէլի համամիտ մը կը ներկայանայ, երբոր Հայոց պաշտպանութեան նպատակով Հայոց թագաւորութիւնը կը ստանձնէ, բայց առաջին վայրկեանէն անոնց դաւանութիւնը կ'անարգէ, և համեմատական հաւատքի պաշտպանութեան եկած ըլլալը կը յայտարարէ, Հայոց նուիրապետութիւնը կը նախատէ՝ Լատին եպիսկոպոս մը Հայոց հայրապետին նախադասելով, Հայոց սրբութիւնները կ'արհամարհէ Հայոց միւռոնը ընդունիլ չուզելով, և վերջիվերջոյ իբրեւ լոկ արտաքին ձեւակերպութիւն մը զայն կ'առնէ, պաշտօնական օծումը յատուկ միւռոնով ստանալէն ետքը։ Իր'ն հպատակներուն սիրելի ըլլալու, և անոնց զգացումները իրեն յանկուցանելու փափաքող իշխանապետ մը, պէտք չէր որ անոնց կրօնական զգացումները վիրաւորելով, և անոնց նուիրական սկզբունքները անարգելով սկսէր։ Այսու հանդերձ դիւցազնական ըլլալու չափ վեհոգի կը գտնենք մենք Հայոց ընթացքը, և զիրենք ներշնչող կաթողիկոսին հոգին, որ Լեւոնի կեանքին պաշտպան կը կանգնին իրենց կեանքին վտանգով, երբ անոր անձնուէրները կարծուած՝ ազգակից և դաւանակից և չահակից Լատիններն են, որ անոր դէմ կը դաւաճանէին լրբենի ըմբոստութեամբ։

1345. Նիւթերնիս ամէն կողմէն սպառած ըլլալու համար, քանի մը խօսք ալ քաղաքական տեսակէտէն աւելցնենք։ Մեր տեսութեամբ պէտք չէ Հայոց թագաւորութեան կործանումը 1375'ին կատարուած

եղելութիւն մը կարծել: Անիկայ կործանուած էր արդէն, երբոր Նղրեցի Կոստանդիններուն օրէն սկսեալ անունի մը վերածուած էր, Կիլիկիան ամբողջը կորսնցնելով, և միայն Սիս քաղաքի շրջանակին մէջ պարփակուած էր, քաղաքին շրջակայ արտերուն մշակութեան ելնելու ապահովութիւն չունենալու չափ: Անիկայ արդէն վտանգուած էր, երբոր Խաչակիրներու ժամանակէն Արեւմուտքի հետ մտերմանալով Արեւելքի թշնամութիւնը իր վրայ հրաւիրած էր, երբ փոխադարձաբար Արեւելքի հզօր հակառակութեանց դէմ Արեւմուտքի բարեկամական օգնութեանց կը դիմէր, և այդ օգնութիւնը ստանալու համար դաւանական և ծիսական զոհողութեանց լուծին տակ մտնել կը ստիպուէր, իսկ այդ հոգիներու ու սրտերու վրայ ճնշող լուծը չկարենալով տանիլ՝ արտաքնայարդար ձեւերու կը դիմէր, և միշտ իրեն դիմաց խաբէական խոստումներ, թձախնդիր պատճառանքներ, անհիմն չքմեղանքներ, ու կեղծուպատիր խօսքեր կը գտնէր: Այս է բուն պատճառը, որ Կիլիկիա հետզհետէ կը տկարանար, կը հիւծէր, կը սպառէր, և անողոքելի կործանման կը դիմէր: Մարդկային զգացումները անբացատրելի գաղտնիքներ ունին, որ երբ մէկ մը հասանքի մը կը մտնուի՝ դժուարաւ կրնայ ինքզինքը թօթափել, և փորձանքէն դուրս ճողոպրիլ: Նոյնը եղաւ մեր Կիլիկեցիներուն ալ: Լեւոն առաջին թագաւորէն և Լամբրոնացի օտարասէր քարոզիչէն սկսելով, էջքը չեշտուեցաւ հետզհետէ, եղան զիջողութեանց ճամբան բռնողներ, եղան զայն չափաւորելու աշխատողներ, բայց վերջապէս ուղղութիւնը հիմնապէս չփոխուեցաւ, և սկսուած ճամբան յառաջացաւ, և ինչ որ պիտի ըլլար եղաւ, թէպէտեւ երկու ամբողջ դար քաշքշուելով երկարեցաւ: Ըստ այսմ Սսոյ այրեցաւէր քաղաքին բարձունքը, անձուկ բերդի մը մէջ փակուած ափ մը Հայեր, որոնք իրենց օգնութեան եկող Լատիններուն դաւաճանութիւնն ալ ընկճելու կը պարտաւորուէին, անողոքելի հարկը և իսկական իրականութիւնը ճանչցողներ և մնացածին բանդագուշանքներէ զգուշացողներ էին, երբ կը տեսնէին և կը զգային, թէ բոլոր Մեծ-Հայք ոտնակոխ եղած, Փոքր-Հայք օտարին մատնուած, Կիլիկիա արդէն գրաւուած, Սսոյ քաղաքն իսկ ձեռքերնէն ելած ատեն, լեռան մը կողքին և կղզիացեալ բերդի մը մէջ փակուածները չէին, որ պիտի կարենային երեք չորս բիւր պաշարողները հալածել, Եգիպտական ընդարձակ և հզօր սուլտանութեան դէմ դնել, և Հայ իշխանութեան ապագան ապահովել: Քաղաքական և ռազմական ճշմարտութիւնները իրենց անողոք զօրութիւնն ունին, և անոր հպատակեցան Սսոյ բերդին մէջ Մելէքի անձնատուր ըլլալու հարկը զգացողները, Պօղոս կաթողիկոսն ալ գլուխնին:

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

**1346.** Մայիսր ամբողջ Հալէպի մէջ անցուցին Սիսէ գերի բերուածները, թէպէտ պատուով պահուած և պատշաճապէս կերակրուած (ԴԱՐ. 150), մինչեւ որ Եգիպտոսի սուլտան Շապան Էշրէֆէ հրաման եկաւ անոնք իրեն ղրկել: Յունիս 1'ին Հալէպէ մեկնեցան, և Յուլիս 9'ին Գահիրէ հասան, և նորէն վայելչապէս հիւրասիրուեցան, և երկուշաբթի յուլիս 23'ին սուլտանին առջեւ հանուեցան: Համենենուն օրը չորեքշաբթի կը գրէ Դարդել (ԴԱՐ. 151), սակայն տոմարական հաշուով չորեքշաբթին յուլիս 11'ին կ'իյնայ, և իրօք յիշատակարան մըն ալ յուլիս 11'ին կը դնէ անոնց Գահիրէ հասնիլը (ԱՍՏ. Ա. 213), և յարմարագոյն կ'ըլլայ ըստ այսմ ուղղել Դարդէլի տուած ամսաթիւը: Մելէք ամիրայ հաւանած էր որ Լեւոն կարենայ երթալ ուր որ ուզէ (ԴԱՐ. 142), և Լեւոն այն ատեն նախադասած էր սուլտանին մօտ երթալ (ԴԱՐ. 146), բայց սուլտանը միայն իր իշխանութեան սահմաններուն մէջ ուզած տեղն ընտրելը ներեց, և նա առաջարկեց Գահիրէ մնալ, և Գահիրէի Հայ գլխաւորներուն երաշխաւորութեան ներքեւ ազատ բնակութիւն հաստատեց Գահիրէի մէջ ըստ հաճոյից կամաց իւրոյ, և օրական 60 արծաթ ռոճիկով (ԴԱՐ. 152): Մարգարիտ թագուհին Լեւոնի հետ մնաց իրեն զաւակներով, որք էին Գուիտոն իր առաջին ամուսինէն և Փենենա Լեւոնէն: Իսկ Մա-

**ԳԵՐԻՆԵՐ ԵՒ ԳԵՐԵԴԱՐՁ**

րիամ թագուհի, և Ռեմի կոմուհի և ամուսինը Սոհիէ խնդրեցին Երուսաղէմ բնակիլ, և ըստ այնմ գործադրուեցաւ (ԴԱՐ․ 153), և մեկնեցան Գահիրէէ օգոստոս 6'ին (ԱՍՏ․ Ա․ 214), և պատուով ընդունուեցան Մկրտիչ պատրիարքէ։ Բայց Մարիամ երկարակեաց չեղաւ և 1377'ին Երուսաղէմի մէջ վախճանեցաւ (ՍԻՍ․ 560), և ըստ աւանդութեան թաղուեցաւ Ս․ Յակոբի աթոռանիստ եկեղեցին՝ ընդ սեամբ սուրբ տաճարին (ԱՍՏ․ Ա․ 214)։ Կը մնային կաթողիկոսն ու հայազգի իշխաններ և քաղաքացիներ։ Դարդէլ ընդ ամենայն որս իշխէր տուն ըսած էր (ԴԱՐ․ 148) Մելէքի Սիսէ Հալէպ տարածները, բայց ուրիշ յիշատակարան մը վախճանն և ինն կը դնէ Գահիրէ բերուած Հայերուն թիւը (ԱՍՏ․ Ա․ 203), և կ'երեւի թէ Դարդէլ միայն շատ մեծերն է յիշած։ Հայեր սուլտանէ խնդրեցին իրենց տեղերը դառնալու արտօնութիւնը, յանձն առնելով մնալ ընդ լծով իշխանութեան նորա, և այս պայմանով արտօնուեցան (ԴԱՐ․ 154), և ասոնք ալ օգոստոս 6'ին Գահիրէէ մեկնեցան (ԱՍՏ․ Ա․ 214), և և 1375 տարին չվերջացած Սիս վերադարձան։ Միայն Վասիլ Թորոսեան և այլ եւս չորս գլխաւորներ Հայոց մէջէն, մեծամեծ խոստումներէ հրապուրուելով դարձան ի դէն Սարակինոսաց, թէպէտեւ կ'երեւի թէ յետոյ շատ չբախտաւորուեցան (ԴԱՐ․ 954)։

1347․ Թագաւորի համար հասարակաց աղօթից խնդիր մը կը յիշէ Դարդէլ, նոր մեղադրանք մը աւելցնելու համար կաթողիկոսին դէմ։ Նախ կը յիշէ թէ Հայ քահանաներ աղօթեն ի սուրբ պատարագին և յայլ ժողովս հանապազօրեայս վասն թագաւորացն Հայոց վախճանելոց, և յաղագս յանուանէ վասն թագաւորին որ կենդանին է։ Արդ կ'ըսէ, Լեւոնի գերեկից կաթողիկոսը, քանզի լեալ էր կամակից ժողովրդեան թագաւորին, առ լուսաւորութեան և անթերութեան հրամայեաց քահանայիցն Հայոց բնակելոց ի Գահիրէ և ի Հայաստան, սպառնալեօք բանադրանաց, զի մի՛ այլեւս աղօթեսցեն ի պատարագի վասն Լեւոն թագաւորի փեսայն իւրեանց, և մի՛ յիշեսցեն զանուն նորա յայլ ամենայն ժողովս, այլ ընդ նորին հակառակն աղօթեսցեն վասն սուլտանին Բաբելոնի։ Եւ կը յաւելու թէ ամենք ի Հայոց որք բնակէին ի Գահիրէ չհնազանդեցան կաթողիկոսին և շարունակեցին Լեւոնի համար աղօթել (ԴԱՐ․ 155)։ Բայց չարամտութիւնը աւելի Դարդէլի սիրտին մէջն է, հոռմէականութեան նպաստաւոր չեղող կաթողիկոսը նախատելու համար, չարամտութեան հետ անգիտութիւնն ալ խառնելով։ Ստոյգ է թէ Հայոց եկեղեցին յականէ յանուանէ կ'աղօթէր Հայոց թագաւորին համար, և հին գրչագիրներ կը ցուցնեն, թէ պատարագի Վասն խաղաղութեան (ԺԱՄ․ 575) և ժամերգութեան Աստուած (ԺԱՄ․ 243) քարոզներուն մէջ, ուր այսօր կը կարդանք Վասն բարեպաշտ թագաւորաց, հին ատեն կ'ըսուէր Վասն բարեպաշտ թագաւորին մերոյ այս անուան, և նոյն իսկ անդաստանի օրհնութեանց մէջ, ուր այժմ կը յիշենք թագաւորութեան քրիստոնէից (ԺԱՄ․ 266), հին ատեն կ'ըսէին թագաւորութեան Հայոց։ Սակայն թագաւորութեան բնաջինջ ըլլալէն, և Հայերուն ստիպեալ օտարազգի իշխանութեան հպատակութեան ներքեւ ընկնալէն ետք, հնար չէր հին բացատրութիւնները պահել, և Պօղոս կաթողիկոս բռնադատեալ պատշաճ փոփոխութիւնը հրամայած է, ճարտար դարձուած մը գործածելով։ Նա չէ հրամայած, վասն սուլտանին Բաբելոնի աղօթել, ինչպէս Դարդէլ կը կարծէ, այլ թագաւորին բառը թագաւորաց փոխելով, և Հայոց բառը քրիստոնէից դարձնելով, խուսափած է ոչ-քրիստոնեայ վեհապետի անունը ծիսական յիշատակութեան մտցնելէ։ Իսկ քրիստոնէից յիշատակութեամբ լոկ եւեթ Հայերն է իմացած, և ոչ թէ Արեւմտեան թագաւորութիւններէն մէկը կամ միւսը, ինչպէս ոմանք կը սիրեն մեկնել։ Հին ասացուածոց փոփոխուելուն ժամանակը մութ էր մնացած մեր պատմութեանց մէջ, իսկ Դարդէլի ակնարկը զայն ճշդելու կը ծառայէ, և Պօղոս կաթողիկոսի ժամանակ եղած ըլլալը կը վկայէ, և անկէ հրամայուած՝ բռնադատեալ պահանջից ներքեւ, և ոչ թէ լուսաւորութեան և անթերութեան նպատակով։ Իսկ Գահիրէի Հայերէն ոմանց Լեւոնի համար աղօթելու շարունակելը՝ կաթողիկոսին կամքին դէմ, պաշտօնական շրջանակէ դուրս գործ մը եղած ըլլայ թերեւս, զի այլապէս հնար չէ զայն բացատրել, նոյն իսկ սուլտաններու

մայրաքաղաքին մէջ և Լևոնի իրենց մօտ արգելական եղած ատեն։

**1348.** Պօղոս կաթողիկոսի կեանքին և պաշտօնավարութեան մնացած մասին վրայ որոշ տեղեկութիւններ չունինք։ Մահը կը դրուի սովորական ցուցակներու մէջ 1377ին, բայց չենք գիտեր թէ որ աղբիւրէ քաղուած է։ Անեցիին շարունակողը 1382ին կը դնէ Թէոդորոսի կաթողիկոսութիւնը որ Պօղոսին յաջորդն է, և անոր 9 տարի պաշտօնավարութիւն կու տայ (ՍԱՄ. 170), և կը համաձայնի Թէոդորոսի սպանութեան 1393 թուականին (ՍԱՄ. 172), մինչ 1377էն հաշուելով 16 տարի պէտք կ'ըլլար տալ Թէոդորոսի կաթողիկոսութեան։ Դավրիժեցին ալ միայն 8 տարի կու տայ Թէոդորոսի (ԴԱՎ. 336), և այս հաշուով մինչև 1385 պէտք կ'ըլլայ երկարել Պօղոսի կաթողիկոսութիւնը։ Որչափ ալ Անեցիին շարունակողին և Դավրիժեցիին վկայութիւնները վճռական փաստեր չըլլան Պօղոսի կաթողիկոսութեան տևողութիւնը ճշդելու, սակայն Զամչեան որոշ վկայութիւն մը չյիշեր, Պօղոսի ամս ութ միայն ի հայրապետութեան կացեալ ըլլալը հաստատող (ՉԱՄ. Գ. 362), և մենք կը հաւանինք վերյիշեալ վկայութեանց հետևիլ, և նոյներէն Թէոդորոսի ընծայուած տարիներէն համառօտելով, Պօղոսի կաթողիկոսութիւնը երկարել մինչև 1382, ընդամէնն 8 տարի տալով անոր պաշտօնավարութեանը։ Բայց երկարելով ալ աւելի բան մը չունինք պատմելու։ Պօղոս գերութենէն դառնալով նոր կացութեան մը դիմաց կը գտնուէր, և կը պարտաւորուէր Հալէպի ամիրայէն թողուած Սիսի հրամանատարին իշխանութեան ներքև գործել (§ 1342), և նոր կառավարութեան պայմաններուն համակերպիլ։ Իրաւ այլազգիք միջամտողներ չէին քրիստոնէից հաւատքին, բայց անգամ մը որ զանոնք ազատ կը թողուին իրենց կրօնքին հետևելու, այլևս մանրամասնութեանց չէին միջամտեր, և ձևեր ու կերպեր չէին հրամայեր, և այս երեսէն Պօղոս կրնար գէթ թեթևաբեռնած զգալ, Լևոնի կողմէ եղած կրօնական թելադրութիւնները և պահանջումները դադրած տեսնելով։ Պօղոսի պէտք էր նոր. դրութեան համեմատ նոր պաշտօնավարութիւն մը կազմակերպել, ինչ չափ ալ աւերակներու վրայ մնացած էր, և անշուշտ իր հայրապետանոցն ալ քանդուած էր, երբ Լևոնի հրամանով Սիս հրձիգ եղաւ, որպէսզի թշնամին իր ապաստանարան չծառայէ։ Աւելցնենք թէ Պօղոս ոչ միայն պիտի ջանար կրօնական կարգադրութիւններ ընել, այլև քաղաքական կացութեան համար ալ օգտակար թելադրութիւններ ընել, և ահա թէ ինչո՞ւ։

**ՆՈՐ ԿԱՑՈՒԹԻՒՆ**

**1349.** Քաղաքական նոր կացութիւնը, պարզ և յստակ կերպով չէր կրնար գծուիլ մէկէն։ Ստոյգ է թէ Սիս իր ամիրան ունեցած էր, բայց նա ժամանակին տիրող դրութեան համեմատ, ոչ թէ գաւառապետ կառավարիչ մըն էր պարզ պաշտօնէի դերը վարող, այլ իւրովի և լիազօր իշխանութեամբ երկրին տէրն էր, պարտաւոր ըլլալով միայն գերիշխան սուլտանին տարեկան հարկ մը վճարել, և անոր հրամանին համեմատ իր գունդովը պատերազմի երթալ, ազատ ըլլալով իր հաշուին ալ արշաւանքներ ընել և ասպատակներ հանել։ Այդ դրութեան մէջ դիւրին էր մասնաւոր անձերու ալ աստ և անդ ամուր տեղեր ապաւինիլ, և անոնց մէջ և անոնց շուրջը որչափ կը զօրէին՝ ազատ իշխանութիւն վարել։ Կիլիկիոյ թագաւորութեան անկումը այդ գիրքը զօրացուց։ Իրաւ թագաւորութիւն չկար, և երկիրը ընդհանրապէս Եգիպտոսի գերիշխանութեան անցած էր, բայց Հայ իշխաններէն որոնք որ կրնային, Տաւրոսի և Ամանոսի բարձունքներուն վրայ, իրենց համար ամրութիւններ և իշխանութիւններ կազմեցին, սկսելով ու մեծնալով, զօրանալով ու ջնջուելով՝ պարագայից համեմատ։ Այդ կացութիւնը երկար տևեց Կիլիկիոյ մէջ, և մինչև մեր օրերը հասած Զէյթունի իշխանները, այդ դրութեան մնացորդներն են։ Ընդարձակ և կանոնաւոր պատմութիւն մը կը պակսի, և ցրիւ տեղեկութիւններ մտադիր ուսումնասիրողի քննութեանց կը կարօտին կատարեալ պատմութեան վերածուելու համար։ Մենք

**ԵՐԿՐԻՆ ՎԻՃԱԿԸ**

պիտի բաւականանանք մտադրութիւն հրաւիրելով Անեցիի չարունակողին աչքէ վրիպած մէկ տողին վրայ, որ 1376 թուականին ներքեւ կը գրէ, Կոստանդին ամ թագաւոր և որդին, (ՍԱՄ. 170), միեւնոյն ձեւով, որով անկէ առաջ ալ Կոստանդին թագաւորները յիշած էր, Կոստանդին ամ երկու, Կոստանդին ամ տասներկու (ՍԱՄ. 169), որով այդ վերջին Կոստանդինն ալ նոյնպէս թագաւոր մը պէտք է իմանալ։ Իրօք ալ Կիլիկեցի ժամանակագիր մը 1424'ին կը գրէ, թէ Ի թագաւորելոյ Կոստանդին թագաւորին և որդին ամ (ՍԻՍ. 543), որ ամենայն ճշդութեամբ կը կապուի 1376 թուականին հետ։ Այս երկու վկայութիւններէ իրաւունք կ'ունենանք հետեւցնել, թէ Լեւոնի գերութեամբ՝ թագաւոր անունը Կիլիկիայէ չջնջուեցաւ, և այն մասնաւոր իշխաններուն մէջ, որ աստ և անդ կը տիրէին, գլխաւոր մը կար՝ թէեւ ոչ Սիսի մէջ, որ անոնց վրայ գերիշխան կը նկատուէր, և որ ցրուեալ բեկորներուն կեդրոնն էր, և թագաւորի անունն ալ կը կրէր։ Նա բաւական զօրութիւն ալ ունեցած պիտի ըլլայ, եթէ 1424'ին Եգիպտոսի սուլտան մը անձամբ անոր դէմ պատերազմի գալու կը ստիպուի, և վերջնական յաղթութիւնը կը տանի (ՍԻՍ. 543)։ Մեր տեսութեամբ, Պօղոս կաթողիկոս իւր գործունէութիւնն ու մասնակցութիւնը ունեցած է այս մասին, բաժանեալ իշխաններու միաբանական կապը պահելով, և պատշաճ խրատներով զիրենք քաջալերելով։ Պօղոս կնքած կ'ըլլայ իւր կեանքը բնական մահով, քանի որ տարբեր յիշատակութիւն մը չունինք։ Ինքն կը ներկայանայ զգացման և գաղափարի տէր անձ մը, ամենադժուարին պարագաներու ներքեւ ապրած, և իւր եկեղեցւոյն պաշտպանութեան նախանձախնդիր։

**ՈՒՆԻԹՈՐՆԵՐՈՒ ԴԷՄ**

**1350.** Կիլիկիոյ թագաւորութեան մեծ տագնապը և ողբալի արկածը ստիպեց մեզ պահ մը մոռցնել արեւելեան գաւառները, ուր կրօնական խնդիրներ բուռն յուզմանց պատճառ կ'ըլլային։ Ունիթորներ նոր կազմակերպութեամբ և Սրբեւմուտքէ ստացուած նպաստներու զօրութեամբ (§ 1318), հետզհետէ աւելի կը տարածուէին ու կը քաջալերուէին, և պարզապէս բռնութեանց և հալածանաց կը յանդգնէին ազգային եկեղեցւոյն հաւատարիմ Հայերուն դէմ։ Իրենց գլխաւոր զէնքն էր, շարք մը պիտակ հեղինակութիւններով և իմաստակ պատճառաբանութիւններով խնդիրը վրդովել, Հայոց եկեղեցւոյն մէջ պաշտուած խորհուրդները անվաւեր ու չեղեալ նկատել, և հաւատացելոց մկրտութեան և պաշտօնէից ձեռնադրութեան վրայ կասկածներ յարուցանելով, կրկնամկրտութիւններ և կրկնաձեռնադրութիւններ ընել, Հայ եկեղեցիներու և սրբութիւններու նուիրականութիւնը ուրանալ և անարգել, և պարզապէս հայադաւաններ անհաւատներու հաւասարել։ Այդ զեղծումները պատմողն ալ իրենց մէջէն է, Մխիթար Ապարանցին, ինքն ալ միեւնոյն անտեղութեանց գործիչ մը (ՁԱՄ. Գ. 447)։ Ջահկեցի եղբայրներէն Թովմաս եպիսկոպոսի յաջորդը կը յիշուի Յովհաննէս Դավրիժեցի (ՍԻՆ. 388), այլ Սամուէլ գաւառահօր յաջորդը յիշուած չէ, բայց թերեւս է նոյն ինքն Կարապետ Ծագարակեր վարդապետը, որ գործի գլուխ կը գտնուէր ճիշդ այդ միջոցին (ՄՆՏ. 37)։ Իսկ Հայոց վարդապետներ, որոնց համար նուիրական էր իրենց հայադաւան ու հայածէս եկեղեցին, և խղճի պարտաւորութիւն կը զգային անոր պաշտպանութեան աշխատիլ, կարեւոր տեսան հակառակորդներուն աղբիւրները ճանչնալ, անոնց լեզուին հմտանալ, անոնց գիրքերուն ծանօթանալ, անոնց պատճառաբանելու ձեւերը որդեգրել, որպէսզի կարենան հաւասար զէնքերով անոնց դէմ պայքարիլ։ Այդ կերպը. ոմանց համար իբրեւ ազգումիջոց կը ծառայէր իրենց վարդապետութիւնն ու ծէսն ու կանոնները հակառակորդներուն գրաբանութեանց դէմ պաշտպանելու, բայց ոմանց ալ գայթակղութեան առիթ կ'ըլլար, արտաքին ձեւերէն հրապուրուելով Ունիթորներու կողմը անցնելու, և իրենց օրինակով ժողովրդականներն ալ գայթակղեցնելու։ Երկու կողմերուն մէջ տիրող մրցումը, առիթներ ալ կը ստեղծէր դէմ դէմի գալու, վիճաբանութիւններ վարելու, որոնք արտաքին կռիւ-

ներու և աղետալի երկպառակութիւններու-ղուն կը բանային։ Խուսափելով չնչին մանրամասնութեանց մտնել, կը բաւականանանք յիշել այն երանաշնորհ վարդապետները, որոնք ազգային և օտար ուսմանց զարգացման, և ազգային ուղղափառ եկեղեցւոյն պաշտպանութեան, և հաւատացեալ ժողովրդեան շինութեան աշխատեցան, և ամուր թումբ կազմեցին օտարամոլ հոսանքին դէմ, որ կը կարծէր հայադաւան եկեղեցին ընկլուզել, այլ ինքն տկարացաւ ու եւ մրղուեցաւ, և Հայ եկեղեցին շարունակեց իւր ուղղութեամբ և ուղղափառութեամբ։

**1351**. Այդ երանաշնորհ խումբին գլուխ ու դասապետ պէտք է ճանչնալ Յովհաննէս

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՈՐՈՏՆԵՑԻ**

Որոտնեցի վարդապետը, ազնուական ազգատոհմէ սերեալ, Իւանէ իշխանին որդին, Ծղակ գաւառի Որոտն շրջանակին Վաղանդան գիւղին մէջ ծնած, 764 նաւասարդ 30'ին, այսինքն է 1315 յունուար 29'ին։ Մեծոփեցին՝ Իւանէ իշխանը Վասակ Սիւնիի սերունդէն կը կարծէ (ՄԵԾ. 15), Տաթեւացին ալ ի Հայկական հարաւոյ Նախճաւան, ի Սիսական ցեղապետութեան սերունդէն կը դնէ (ՍԻՆ. 219), բայց կ'երեւի թէ մերձեցուցմամբ Օրբելեանները հին Սիւնեաց հետ միացուցած են, զի Որոտն շատոնց Օրբելեանց իշխանական կալուած էր եղած, և Իւանէ որդի էր Հասան իշխանի և Վախախ տիկնոջ և եղբայր Սարգիս արքեպիսկոպոսի (ՍԻՆ. 217)։ Օրբելեանց տոհմէն գրեթէ անպակաս էին եկեղեցականութեան նուիրեալներ, ինչպէս Ստեփանոս Տարսայիճեան (§ 1159) և Յովհաննէս Լիպարիտեան (§ 1188) և վերոյիշեալ Սարգիս արքեպիսկոպոսները։ Նոյն կոչման և նոյն յաջորդութեան սահմանուած կ'երեւի Յովհաննէս Իւանեան, մանկութենէն եկեղեցական ուսմանց նուիրուելով, այլ Տաթեւացիին ըսելը, որ և զվիճակ Սիւնեաց յաջորդեաց, և ոչ պանծացեաւ էր ոչ ախորժեաւ (ՍԻՆ.219), զուշակել կու տայ թէ Որոտնեցին հրաժարած է Սիւնեաց արքեպիսկոպոսութենէ բոլորովին ուսմանց և պայքարի նուիրուելու համար։ Որոտնեցին Կախիկ մականուն ալ ունեցած է, իբր թէ կախեալ է սէրն Աստուծոյ (ՄԵԾ. 14), կամ թէ է սէր սիրոյն կախեալ և կանխեալ (ՍԻՆ.219), բայց կը կարծենք թէ յաւէտ նիւթական և արտաքին պատճառ ունեցած է Կախիկ կոչումը, թէպէտ մեզի անծանօթ մնացած։ Իսկ անբացատրելի կը գտնենք Մլաթեցիին գրելը, որ և Կախիկ անուն ծննդեան (ՓԻՐ. 36), զի որեւէ յատուկ անունի նմանութիւն չունի։ Որոտնեցին աշակերտած է Եսայի Նչեցի վարդապետին՝ Գայլեձորի վանքին մէջ, բայց Տիրատուր վարդապետ մըն ալ կը յիշուի իբրեւ իւր ուսուցիչ (ՄԵԾ. 15)։ Յառաջադէմ և զարգացուն՝ Նչեցիի աշակերտներուն մէջ՝ յատուկ նպատակ ըրաւ իրեն այն կողմերը տարածուող Ունիթորներու դէմ մաքառիլ, և այս պատճառով խորին ուսումներու հետեւեցաւ, բայց չկրնար 28 տարի աշակերտած ըլլալ, ինչպէս յիշատակարան մը կը գրէ (ՓԻՐ. 36)։ Կ'երեւի թէ Նչեցիի մահուանէ ետքը (§1275), Որոտնեցիին վիճակեցաւ անոր յաջորդել, թէպէտեւ այն ատեն հազիւ 25 տարեկան եղած կ'ըլլայ, բայց թերեւս Նչեցիէն ետքը պահ մը ուրիշ մըն ալ եղաւ Գայլեձորի առաջնորդ։ Որոտնեցիին Գայլեձորի մէջ աշխատած ըլլալը ստոյգ է, ուսկից փոխադրուեցաւ Տաթեւի ուսումնարանը, և այն տեղէն պայծառացոյց զլոյս Հայոց վարդապետաց և քահանայից (ՄԵԾ. 15), հաւասարապէս ոյժ տալով ամուրի և ամուսնացեալ եկեղեցական դասակարգերուն։

**1352**. Նշանաւոր եղաւ Սարգիս Ապրակունեցի վարդապետն ալ, Որոտնեցիէ

**ՍԱՐԳԻՍ ԱՊՐԱԿՈՒՆԵՑԻ**

կրտսեր, մինչեւ իսկ Նչեցիէ ետքը Որոտնեցիին ալ աշակերտ կարծուած։ Սարգիս հաստատուեցաւ Ապրակունեաց վանքին մէջ, որ շատ մօտ է Երնջակի Ս. Կարապետ վանքին (ՍԻՆ. 378), Ունիթորներու դպրացութեան մէջ, աւելի մօտէն անոնք դիտելու ու անոնց հետ մաքառելու համար։ Կը պատմուի թէ բուռն վէճեր ալ ունեցաւ Կարապետ Ճագարակեր ունիթորին հետ։ Անգամ մը որ Ճագարակեր պատրաստութիւններ կ'ընէր Պետրոս Արագոնացիի պատրաստած Առաքինութեանց և Մոլութեանց գիրքէն Ապրակունեցիին հարցումներ տալ, ասոր աշակերտներէն մէկը, որ Ունիթորնե-

*րու էր աշակերտած, բայց սիրտը հանդարտ չէր, գաղտնի կերպով նոյն գիրքին հայերէնը, զոր Ցակոբ Քռնեցին էր թարգմանած, Սարգիսի կը բերէ, որպէսզի պատրաստուած գտնուի, և իրօք ալ երկու օր ետքը հարցումի եկող Ունիթորներուն, գիրքին համեմատ կը պատասխանէ Սարգիս և քննութեան եկող Ունիթորները կը զարմացնէ* (ՄԵԾ. 37)։ *Ասոր վրայ նոյն գիրքին վրայէն իրեն աշակերտներուն ալ կը դասախօսէ, բայց Մեծոփեցին կը մեղադրէ անոնք՝ որ Սրագոնացիին գիրքը նախադասած են Հայ եկեղեցւոյ ընդունած գիրքերուն, և յանուանէ կը յիշէ Գրիգոր Լուսաւորիչի, Աթանաս Աղեքսանդրացիի, Գրիգոր Աստուածաբանի, Կիւրեղ Աղեքսանդրացիի, Ստեփանոս Սիւնեցիի, Անանիա Շիրակացիի, Պօղոս Տարօնեցիի, Յովհաննէս Օձնեցիի, Սարգիս Հաղբատացիի, Դաւիթ Փիլիսոփայի, Մովսէս Քերթողահօր, և Աստղիկ Թարգմանիչի գիրքերը* (ՄԵԾ. 38)։ *Ասոր վրայ, Ապրակունեաց վանքին աշակերտութեան Ունիթորութենէ խորշելուն պատճառով հարկ եղաւ նոր կարգադրութիւն մը ընել, ինչպէս պիտի յիշենք։*

ՄԱՂԱՔԻԱ ՂՐԻՄԵՑԻ

**1353**. *Ուրիշ վարդապետաց խումբ մըն ալ Ծամբիձորի վանքին մէջ կը պատրաստուէր միւս Սարգիս վարդապետի ձեռքին տակ, սակայն երկու Սարգիսներ աւելի փափաքող էին միաբանելու կէտ մը գտնել, և Արեւմտեայց ուսումէն օգտուելով Հայութեան իսկութիւնը պահել, բան մը որ անհնար էր յորչափ մոլեգին նախանձայուզութիւն մըն էր Ունիթորներուն նշանաբանը։ Այս իրականութիւնը լաւ յայտնի էր Որոտնեցիին, որ երբեք չմօտեցաւ զիջողական ձեռնարկներու։ Իրեն աշակերտներուն մէջ կը գտնուէր, իրմէ ալ աւելի նախանձայոյզ մէկը, Մաղաքիա Ղրիմեցի վարդապետը։ Բնիկ Ղրիմու Կաֆա քաղաքէն, և նշանաւոր ազգատոհմի զաւակ, յոյժ մեծ տան որդի, և մեծ հարստութեան տէր, որ եկեղեցւոյ ծառայելու փափաքով եկած էր աշակերտիլ Որոտնեցիին՝ Տաթեւի վանքին մէջ։ Գրեթէ տասնամեայ աշխատութենէ ետքը, ինքն ալ գործի գլուխ եղաւ Նախիջեւանի վանքերը ծաղկեցնելու և աշակերտութիւն կազմելու միտքով* (ՄԵԾ. 15), *բայց եղելութիւնները գննելէ և կշռելէ ետքը, և տեսնելով որ Ունիթորներ վերացական ուսումներու հետ գործնական միջոցներու և յայտնի բռնութիւններու դիմելէ չեն կասիր, Մաղաքիա ալ որոշեց այդ կերպն ալ ընդունիլ, և արտաքին միջոցներով զօրացնել ուղիղ ուսման հետեւողները, ընկճել հակառակորդները, և քաջալերել հաւատացեալ ժողովուրդը։ Այդ նպատակին յատկացուց իւր հայրենական մեծագանձ հարստութիւնը եւս և ինչ որ ծանօթներէն և բարեկամներէն կրնար հաւաքել։ Ձեռք առաւ նաեւ տիրող պետութեան պաշտօնեաները՝ որ իր ուղղութեան օգնեն, և սկսաւ բռնութեամբ ալ վանել բռնութիւն գործածողները։ Իսկ ինքն կատարեալ ճգնողական կեանքի հետեւեցաւ, Ճգնաւոր՝ կոչումը իր մականուն ստանալու չափ, և զգեստի ու ուտեստի ու կենցաղի ամէնէն խստամբեր պայմաններուն ենթարկելով իր անձը* (ՄԵԾ. 16)։

---

# Տ. ԹԷՈԴՈՐՈՍ Բ. ԿԻԼԻԿԵՑԻ

ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

**1354**. *Հնար է միտքէ անցընել, թէ այն խառնակ ու անկերպարան վիճակի մէջ, որ կը տիրէր Սսոյ հայրապետական աթոռին շուրջը, հնար ըլլար կանոնաւոր ձեւակերպութիւններով կաթողիկոսական ընտրութիւն կատարել, ուստի աւելորդ կը նկատենք որոնել թէ ինչ կերպով բարձրացաւ Թէոդորոս հայրապետական աթոռ։ Իր նախընթացէն ալ տեղեկութիւն չունինք, և Կիլիկեցի մակդիր անունը տուած ենք իրեն այն ենթադրութեամբ, որ երկրացի մը պէտք է եղած ըլլայ, քանի որ Սիս աւերակ էր այլ եւս։ Անշուշտ ազդեցիկ եպիսկոպոսներէն մին եղած է, թագաւոր կոչուող Կոստանդինի պաշտպա-*

*նութիւնը վայելած է* (§ 1369), *և Սսոյ ամիրային ալ պաշտպանութիւնը ստացած է անշուշտ այն միջոցներով, որոնք Թուրք ամիրաներու աչքին նշանակութիւն ունէին։ Ուրիշ եղանակ մը մտածել անհնար է, կըշռելով պարագաները և քաղդատելով հետ զննել անկումի դիմող աթոռին վիճակը։ Թէոդորոսի աթոռ բարձրանալուն թուականը, հաւանականագոյն հաշուով դրինք 1382'ին, և պէտք չենք զգար անգամ մըն ալ կրկնել մեր տուած բացատրութիւնները* (§ 1348)։ *Անեցիին շարունակողը կը գրէ թէ տէր Թէոդորոս գնաց ի Մըսըր, և մեծաւ պատուով ընկալաւ զնա սուլթան Բարխուղն* (ՍԱՄ. 170), *որ է Բարկուկ կամ Պարգօն-Տայէր, այն որ առաջ լոկ խնամակալ էր։ Դարդէլի պատմութեամբ, Շապան-էշրէֆ սուլտանին* 1377 *մարտ* 12'*ին* (ԴԱՐ. 157) *սպանուելուն վրայ, անոր յաջորդած էր որդին Մելէք-Մանսուր կամ Մանսուր-Ալայէտտին,* 7 *տարեկան տղայ մը* (ԴԱՐ. 159), *իսկ իշխանութիւնը իրարու ձեռքէն յափշտակած էին ինքնըստիր խնամակալներ, Գարաշ* (ԴԱՐ. 159), *Էնէբէգ* (ԴԱՐ. 160), *Դեստամուր* (ԴԱՐ. 163), *Բարեկ* (ԴԱՐ. 162), *և Բարկուկ, միշտ իբրև խնամօղ սուլթանին և պետութեան* (ԴԱՐ. 181)։ *Վերջինիս սուլտանութեան համիլը* 1382'*ին կը դրուի, և Թէոդորոսի անոր օրով Եգիպտոս գալը կը ցուցնէ թէ նոր բարձրացած էր կաթողիկոսութեան։ Պատմութիւնը բացառիկ պատճառ մը չտար այդ այցելութեան, ուստի կը մնայ հետևեցնել, թէ նոր պաշտօնի անցած ըլլալով, հաստատութիւնն ընդունելու և տիրապետող սուլտանութեան պաշտպանութիւնը ստանալու համար կատարուած ուղևորութիւն մըն էր։ Սոյն այս պարագայն նոր փաստ մը կ'ըլլայ Պօղոսի մահը մինչև* 1382 *յետաձգելու* (§ 1348), *և նոյն տարին դնելու յաջորդին կաթողիկոսութիւնը։*

**1355**. *Թէոդորոսի Եգիպտոս գացած տարին, Լևոնի գերութեան վերջանալուն և Եգիպտոսէ հեռանալուն թուականն է, այլ չենք կարծեր որ իրարու հանդիպած ըլլան։ Լևոնի Աղեքսանդրիայէ մեկնիլը* 1382 *հոկտեմբեր* 7'*ին տեղի ունեցաւ, իսկ Թէոդորոս աւելի*

ԼԵՒՈՆԻ ՀԱՄԱՐ ՋԱՆՔԵՐ

*ետքը հասած պիտի ըլլայ, զի Լատին պատմիչը բնաւ անոր մասին ակնարկ մը չունի։ Լևոն գրեթէ մոռցուած մնացած էր Գահիրէի մէջ մինչև* 1377 *տարին, երբ խումբ մը ազնուական և եկեղեցական Լատին ուխտաւորներ Երուսաղէմ չգացած Գահիրէ հանդիպեցան և իրեն հետ տեսակցեցան։ Ասոնց մէջ էր Յովհաննէս Դարդէլ քահանայ* (ԴԱՐ. 158), *Փրանկիսկեան միաբան* (ԴԱՐ. 168), *ընիկ Գաղղիացի, Եստամպ* (Etampes) *քաղաքէ, որ առանձինն մտադրութիւն դարձուց Լևոնի վրայ։ Յուլիս* 20'*ին յատուկ պատարագեց թագուհիին անունին օրը՝ Ս. Մարգարիտայի տօնին, և յանձն առաւ իր մեծաւորէն հաւանութիւն ստանալով դառնալ և Լևոնի մօտ մնալ, իբրև խոստովանահայր կամ դրաներէց, և այնպէս ալ ըրաւ* (ԴԱՐ. 158)։ *Սա ինքն է Դարդէլ պատմիչը, որ ինչպէս կը տեսնուի, նախընթաց եղելութիւնները իր հեղինակութեամբ պատմած չէ, այլ պարզապէս Լևոնի ըմբռնումները կրկնած է, որոնք հարկաւ ինքզինքը արդարացնելու տեսակէտով հաղորդուած էին։ Լևոն կանխաւ դիմումներ ըրած էր պապին, Գերմանիոյ և Յունաց կայսրներուն, Գաղղիոյ և Նէապոլսոյ և Սպանիոյ թագաւորներուն, բայց ոչ մէկ կողմէն օգնութիւն չէր տեսած։ Դարդէլի գալուստը կարծես թէ բարեգուշակ եղաւ, զի* 1377 *օգոստոսին պատգամաւորներ հասան Եգիպտոս՝ Կիպրոսի թագաւորէն, Նէապոլսոյ թագուհիէն, և Գուիտոնի Ջապէլ ազգական միջնորդութեամբ Յունաց կայսրէն, որոնք Լևոնի ազատութեանը համար միջնորդեցին, բայց արդիւնք չունեցան, զի ունայնաձեռն եկած էին, մինչ Սուլթանն ընտանեցոյց էր ի բնէ, և ոչ արձակէր ի գոյս օտարաց, կ'ըսէ Դարդէլ* (ԴԱՐ. 155)։ *Եգիպտացիք այդ միջնորդութիւնները նախատեսելով՝ Լևոնի ձեռքէն գիր առած էին թէ ինքն Գահիրէէ հեռանալ չփափաքիր* (ԴԱՐ. 156), *և անկէ օգտուեցան միջնորդութիւնները մերժելու։ Լևոն և Դարդէլ պէտք զգացին պատուիրակ մը ունենալ Եւրոպիոյ մէջ, որ ազատութեան համար պէտք եղած միջոցները հոգայ, և այս նպատակով Դարդէլ ինքն Եգիպտոսէ մեկնեցաւ* 1379 *սեպտեմբեր* 11'*ին և* 1380 *մարտ* 5'*ին Արագո*

նիայի Պետրոս Դ թագաւորին ներկայացաւ Բարկինոնիա (Barcellona) քաղաքի մէջ, գիրերը յանձնեց և գործը բացատրեց, ինչպէս նաև խոստումներ ընդունեցաւ, բայց չկրցաւ Եգիպտացիները հաճեցնելու համար պէտք եղած հարուստ ընծաները ձեռք ձգել։ Այդ պատճառով Դարդէլ Կաստիլիա անցաւ, և Յովհաննէս Ա թագաւորին ներկայացաւ 1380 նոյեմբեր 29ին Մէդինա-Կամպօ (Medina del Campo) քաղաքը (ԴԱՐ. 172), և սիրտը շարժելու համար սկսաւ պատմել զնեղութիւնս բանդին և զմահն թագուհւոյն Մարգարիտոյ՝ և զդստերն Մարիամու կամ Փիննայի դստեր նորա. և թէ զիարդ զիւր ամենայն բանդապահէն զնա ազատեալ զՊերեարոս (ԴԱՐ. 173), թէպէտև Լևոն որչափ ալ արգելական է Գահիրէ (ԴԱՐ. 163), սակայն նոյն իսկ Դարդէլի վկայութեամբ Գահիրէի մէջ կ՚ապրէր ըստ հաճոյից կամաց իւրոց (ԴԱՐ. 153)։ Իրաւ ալ Դարդէլի գործածած միջոցը իր օգուտը ունեցաւ և յաղթեան քաղաքի արքային Կաստիլիոյ, և խոստացաւ ընել և տալ ինչ որ պէտք ըլլայ (ԴԱՐ. 174)։ Սակայն գործադրութիւնը յապաղեցաւ թէ Կաստիլիոյ արքունիքին մէջ տեղի ունեցած արկածներուն պատճառով, և թէ Հռոմէական եկեղեցւոյ մէջ տիրող մեծ հերձուածին երեսէն, որ յառաջ կու գար Աւինիոնի Կղեմէս Է պապին, և Հռոմի Ուրբանոս Զ պապին իրարու դէմ մղած բուռն պայքարէն։ Դարդէլ բաւական աշխատեցաւ մինչև որ ամէն տեսակ դժուարութեանց յաղթէր, և Կաստիլիոյ թագաւորին ընծաները, և երկու թագաւորներուն գիրերը ձեռք ձգէր, և հազիւ 1382 մայիս 21ին կրցաւ Սպանիայէ մեկնիլ Եգիպտոս դառնալու համար (ԴԱՐ. 180)։

**1356**. Յովհաննէս Դարդէլ, և Կաստիլիոյ թագաւորին գինակիրը, և Արագոնայի թագաւորին պատգամաւորը, միասին Աղեքսանդրիա հասան 1382 օգոստոս 14ին, անկէ Գահիրէ անցան. և Լևոնի կարգադրութեամբ բերուած ընծաները մաս մաս ըրին, սուլտանին, Բարկուկին և կարևոր պաշտօնէից համար։ Սեպտեմբեր 5ին Բարկուկին ներկայացան, և սեպտեմբեր 18ին սուլտանին,

**ԼԵՒՈՆ ԱԶԱՏ**

և ընծաները իրենց արդիւնքն ունեցան, և սեպտեմբեր 30ին Լևոնի ազատութեան հրամանը ստացուեցաւ և հանդիսաւոր պատուասիրութիւններ կատարուեցան։ Լևոն առանց ժամավաճառ ըլլալու ճանապարհորդութեան պատրաստութեանց ձեռնարկեց, իր հետևորդներն ու գերութեան ընկերները փրկանաւորեց նոր ստացած միջոցներով, և սուլտանին սեփական գետնաւով Նեղոսն իվար Գահիրէէն Աղեքսանդրիա հասաւ, և հոկտեմբեր 7ին առաջին գտած նաւովը Աղեքսանդրիայէ մեկնեցաւ։ Եգիպտական արքունիքի մեծերը մոռցեր էին Լևոնէ երդում պահանջել նորէն իրենց դէմ չպատերազմելու և չգործելու համար, և ստիպաւ հրովարտակ հանեցին ետ դարձնելու հրամանով, սակայն սուրհանդակը հասաւ առտուն, երբ Լևոն գիշերուան մէջ արդէն մեկնած էր։ Անկէ ետքը կը դնէ Դարդէլ Մանսուր սուլտանի սպանութիւնը, և Բարկուկի սուլտան հռչակուիլը (ԴԱՐ. 185)։ Ըստ այսմ Լևոնի մեկնելէն ետքը տեղի ունեցած կ՚ըլլայ Թէոդորոս կաթողիկոսի Եգիպտոս համնիլը, քանի որ սուլտան Բաբելոնի է որ ձեռամբ պատուով ընկալաւ զնա (ՍԱՄ.170)։ Դարդէլի պատմութեամբ, Լևոն հոկտեմբեր 7ին Աղեքսանդրիայէ նաւարկելով հոկտեմբեր 21ին հասաւ Հռոդոս, և հոն լսեց Կիպրոսի Պետրոս Բ թագաւորին հոկտեմբեր 10ին մեռած ըլլալը։ Պահ մը մտածեց Կիպրոս անցնիլ և թագաւորութիւնը ձեռք ձգել իբրև Լուսինեան ազգատոհմին երիցագոյնը, բայց Հռոդոսի ասպետները չօգնեցին Գենուացւոց հետ չթշնամանալու համար։ Ուստի նոյեմբեր 21ին Հռոդոսէ նաւարկելով դեկտեմբեր 12ին հասաւ Վենետիկ, և Վենետիկեցիք ալ զլացան Կիպրոս երթալու համար ուզած նաւերը տալ (ԴԱՐ. 187)։ Մրցակից պապերուն մէջէն, Լևոն՝ Աւինիոնի պապին կողմը բռնեց, թէպէտ Հռոմի աթոռը մինչև այսօր հակապապ կը հռչակէ Աւինիոնի Կղեմէս Է պապը։ Վենետիկէ հիւսիսային Իտալիոյ ճամբով Լևոն եկաւ Աւինիոն, և իբրև ճշմարիտ թագաւոր և իբրև հաւատոյ խոստովանող մը մեծ պատուով ընդունուեցաւ, և 1383 մարտ 1ին Կղեմէս նուիրեց անոր զպապականն վարդն ոսկեղէն,

եկեալ տան զմենեալն աշխարհն ի Թագա-ւորէ (ԴԱՐ.189)։ Լեւոն Եգիպտոսէ ելնելէ ետքը Դարդէլի աշխատութիւնը վարձատրելու համար, անուանած էր զայն ոփենա-դրէր Հայոց (ԴԱՐ.185), այսինքն է իրեն քարտուղար, պաշն ալ զայն վարձատրելու համար նշանակեց յեպիսկոպոսութեան տալոյն Տորտիզոլեայ ի Թագաւորութեան Նէապոլսի, Թերեւս Տերլիտրոյ (Terlizzi), զի յիշուած անունով քաղաք չենք գտներ։ Այս առթիւ Լեւոն ալ Յովհաննէս Դարդէլի տեղ Յովհաննէս Կորսինի կրօնաւորը անուանեց ոփե-նադրէր Հայոց (ԴԱՐ. 189)։ Յատկապէս մանրամասնեցինք Լեւոնի ազատութիւնը և ուղեւորութեանց պարագաները՝ քաղելով Դարդէլի գրածներէն, որ գլխաւոր գործիչն ու Լեւոնի ուղեկիցն էր։ Այս կերպով անհիմն կը յայտնուին այն պատմութիւնները որոնք Շահան Հայ իշխանի մը աշխատութեանը, և Հռոմի Ուրբանոս պապին միջնորդութեան կը վերագրեն Լեւոնի ազատութիւնը։ Թերեւս Շահան կոչուածը չփոխուած ըլլայ նախկին Հայ քահանայ և հաւատափոխ Մանուէլի հետ, զոր Դարդէլ սուտ սալետ և խաբեբայ կ'անուանէ, բայց և այնպէս պարտաւորուեցաւ միջոց մը իրեն գործակից պահել (ԴԱՐ. 179)։ Միեւնոյն պատճառով ալ չկրնար հաստատուիլ Լեւոնի Եգիպտոսէ ելնելէն ետքը Երուսաղէմ այցելած, և Մարգարիտան ու Փեննան այնտեղ թողած ըլլալը (ՁԱՄ. Գ. 363), որուն արձագանգ կ'ըլլան Երուսաղէմի մէջ ընդունուած գրոյցներն ալ, թէ Լեւոն պատուասիրուած ըլլայ Յովհաննէս Լեհացի պատրիարքին կողմէ, և թէ թագուհին ու աղջիկը Երուսաղէմ ապրած ու մեռած և Ս. Յակոբի մէջ թաղուած ըլլան, Սարգիս Եգիպտացի պատրիարքին օրով 1405'ին (ԲԱՌ. 46)։ Ուրիշ մըն ալ Մարգարիտա թագուհին Եգիպտոսի մէջ մեռած և Հայոց Ս. Մարտիրոս եկեղեցւոյն մէջ թաղուած, կը գրէ, 1377'էն քիչ ետքը (ՍԻՍ. 560), որ է ըսել Դարդէլի Եգիպտոսէ մեկնելէն առաջ։ Սակայն Դարդէլ այսպիսի բան մը չյիշեր, և Կաստիլիոյ թագաւորին առջեւ տրքայազուն տիկիններուն նեղութիւնները կը պատմէ (ԴԱՐ. 173), որով կը ցուցնէ թէ 1380'ին վերջերը դեռ կենդանի էին։ Բայց միւս կողմէն պէտք է նաեւ նկատել, թէ Լեւոնի Եգիպտոսէ մեկնելուն առթիւ և մեկնելէն ետքը, Դարդէլ այլեւս թագուհիին և դստեր խօսքը չըներ, ուսկից կրնայ հետեւիլ Մարգարիտի 1381'ին վերջերը կամ 1382'ին սկիզբները Եգիպտոսի մէջ մեռած ըլլալուն աւանդութիւնը (ԲԱՍ. 147)։

**1357.** Ուղղամիտ և ուղղափառ վարդապետներու կողմէ Ունիթորներու դէմ բացուած պայքարը պատմած ատեննիս (§ 1350), յիշեցինք Ապրակունեաց կամ Երնջակի վանքին

ՆՈՐ
ՎԱՆՔԵՐ

մէջ ծագած գայթակղութիւնը, և աշակերտութեան մէջ ծագած չփոթութիւնը (§ 1352), որ նախազգացուած էր Ստեփանոս փակակալ վարդապետէն ձեռամբ Գէորգայ յանարժան երիցու (ՄԵԾ. 31)։ Մաղաքիա Ղրիմեցի վարդապետ հազիւ թէ լուր կ'առնէ, տեղւոյն վրայ կը հասնի, և Ապրակունեաց վանքին կացութիւնը ուղղելու համար, անմիջապէս Տաթեւէ հոն կը հրաւիրէ Որոտնեցին, և անոր կը յանձնէ գործը նայիլ և կարգադրել, մինչ ուր է տարածեալ կայթակղու-թիւնն չարութեան որդւոց ապստամբացն (ՄԵԾ. 39)։ Իսկ Սարգիս Ապրակունեցին, որ ուղղութենէ չէր շեղած, բայց յուզումը զսպելու զօրութիւնը չէր ունեցած, կը փոխադրէ Նախիջեւանի մօտ Աստապատի վանքը, հոն ալ աշակերտութիւն մը պատրաստելու համար։ Ղրիմեցին իւր նիւթական միջոցները երկուքին տրամադրութեան տակ կը դնէ, վանքերուն բարեկեցիկ վիճակն ապահովելու համար, և իւր գիտցած արտաքին միջոցներն ալ կը գործածէ՝ դուրսէ ոտնձգութիւնները ու բռնութիւնները զսպելու։ Այդ կարգադրութեանց թուական կրնանք նշանակել 1380 տարին, կամ քիչ առաջ, Պօղոս կաթողիկոսի վերջին ատենները։ Որոտնեցին ալ զու կերպով քննութիւն կատարեց, կոչեաց զամենայն կարգաւոր և աշխարհական, և սպառնաց ի նզովս զամե-նայն չարութեան որդւոց ապստամբաց։ Ամէնքը հրապարակային հարցափորձի ենթարկեց, և երբ զորդաւորեցան արտաքին պատիժներով ալ խրատեց, զոմանս եդին ի բանտի յեր-կաթի հարեալ, և զոմանս քարածեծ արարին (ՄԵԾ. 40)։ Որոտնեցիին ըրածը պէտք չէ զար-

*մանք պատճառէ, նկատելով ժամանակին սովորութիւնները, և Ունիթորներու կողմէ ձեւուած ամբաստանութիւնները, մանաւանդ որ Որոտնեցին իրը ապաշխարութիւն խըստացած է Թերութիւններին ճանչցողներուն վրայ, իսկ բաժնուիլ ուզողներ՝ ելած ու մեկնած են ազատօրէն։ Ասոնց մասին ալ կը գրէ Մեծոփեցին, թէ* «Մինչեւ պատժեցան, «ոմանք գլխատեալ եղեն, ոմանք խոստովանեալ [illegible]», *և անոնք իսկ որ* «փախուցեալ գնացին յաշխարհն Փռանկաց, ի նոցա միջէ [illegible] ի գլուխ եդեալ եղեն» (ՄԽԾ. 40)։ *Քանի որ իրեն չտեսած բաները կը պատմէ Մեծոփեցին, գրոյցներ կրկնած կ'ըլլայ։ Իր բացատրութիւնները վերլուծելով կրնանք ըսել, թէ լատինացեալ վարդապետներուն մէջէն ջլախտաւոր խելագարներ ալ եղան, կամ թէ Լատիններուն կասկածաւոր երեւնալով կրակի փորձութեան ալ ենթարկուեցան, հաւատաքննական ատեաններու սովորական ձեւով։ Այդ անջատուողներուն մէջէն* «ղղջացեալ» *ետ դարձողներ ալ եղած են, ինչպէս յանունէ կը յիշուի Ասոմ Մոկացի վարդապետ մը, որ դառնալէն ետքը առաջ Երուսաղէմ գացած, և անկէ իր գաւառը եկած է, ուր և* «[illegible]» (ՄԽԾ. 40)։ *Ապրակունեաց և Աստապատի վանքերը, երկու նշանաւոր մեծ վարդապետներուն ձեռքին տակ շուտով յառաջացան և փայլեցան՝ Որոտնեցիին կատարած պահպանութեան և պաշտպանութեան շնորհիւ։ Ամէն կողմէ ուսման ծարաւի, և եկեղեցւոյն հաւատարիմ աբեղաներ և քահանաներ և դըպիրներ՝ խուռն դիմեցին այն վանքերը, և բազմաթիւ աշակերտութիւն մը կազմուեցաւ, որ նոյն իսկ Ունիթորութեան կեդրոնին մէջ ուղղափառութեան համար աշխատեցաւ ու արդիւնաւորուեցաւ, և զօրաւոր թումբ եղաւ օտարամուտ նորութեանց՝ եւս քան զեւս տարածուելուն։ Մաղաքիա Որիմեցի, ամէն տեսակ դիւրութիւններ պատրաստեց և դժուարութիւններու յաղթեց, մինչեւ իր կեանքին վերջը, որ դժբախտաբար շատ շուտ վրայ հասաւ։*

**1358.** *Քաղաքական կացութիւնը, թէպէտ անկանոն ու բռնապետական իշխանութեանց ներքեւ, փոքր ի շատէ հանդարտած վիճակ մը ունէր, երբ անակնկալ մրրիկի պէս նոր արշաւանք մը հասաւ արեւելքէն, որ վերիվայր*

LENKTIMOURI
ARSHAVANKE

ԼԷՆԿԹԻՄՈՒՐԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

*դարձուց երկրին կացութիւնը, հուր ու սուր, աւերած ու կոտորած սփռելով ամէն կողմ, և գլխաւորապէս Հայաստան ու Հայաբնակ գաւառները։ Լէնկթիմուրի կամ Կաղ-Թիմուրի կ'ուզենք ակնարկել, զոր Եւրոպացիք Թամէրլան անունով կը ճանչնան։ Լէնկթիմուր 1335ին Թաթարաց Քէշ քաղաքը ծնած էր, և 1361'ին իր հայրենական երկրին մասնաւոր իշխանութեան անցաւ, և հետզհետէ զայն ընդարձակեց, քաջութեան, բռնութեան և խարդաւանութեան միջոցները անխտիր գործածելով, մինչեւ որ 1370'ին Թաթարաց մեծ խան հռչակուեցաւ։ Իսլամ պետութիւններ կամ - սուլտանութիւններ բոլոր Ասիոյ կը տիրէին այն միջոցին, և բաժիններ իրարու ձեռքէ կը խլէին։ Մեծ Խալիֆա մը կը մնար Պաղտատի մէջ, որ անունէ աւելի ազդեցութիւն չունէր միւս սուլտաններուն վրայ, որոնք կ'իշխէին Պարսկաստան, Ատրպատական, Միջագետք, Ասորիք, Եգիպտոս, Փոքր Ասիա, Կովկաս, և ամէնուն ձեռքին ներքեւ ալ Հայութեան ցրուեալ բաժիններ կը գտնուէին, որոնք ամէն շարժումներուն աղէտները կը կրէին։ Լէնկթիմուր իր ընդհանուր իշխանութեան առաջին տասնամեակին մէջ Թաթարներու և Պարսիկներու սահմաններուն մէջ գործեց, և միայն 1380'ին իրեն բանակները ողողեցին Ատրպատականը և Հայաստանը։ Սուլտանիոյի ամիրան՝ Էտիլ հպատակութիւն յայտնեց, և Թաւրիզի ամիրա Ահմէտը հալածելու օգնեց, բայց իբր դաղանի դաւադիր ամբաստանուելով, պղնձի սանի մէջ եփուելով սպաննուեցաւ* (ՄԽԾ. 13)։ *Իսկ Թաթար հրոսակը Ատրպատականէ սփռուեցաւ Վանայ և Կարսի կողմերը, Սիւնիք ալ մտաւ և 12 գաւառները աւերեց ու աւարեց, բայց 1382'ի յունուար 6'ին, Յայտնութեան օրը եկած սաստիկ ձիւնը, հրոսակը ստիպեց ցրուիլ, ու այդ առթիւ* «[illegible]», *և ապստամբողները* «[illegible] ընկեցեալ, գնացին յաշխարհն իւրեանց» (ՄԽԾ. 14)։ *Սիւնեաց գաւառներուն արկածները*

անհնար էր որ Ապրակունեաց և Աստապատի վանքերուն ալ աղետալի չըլլային, սակայն յատուկ յիշատակութիւն մը չգտնելնուս կը հետեւցնենք, թէ Ղրիմեցիին ջանքերն ու նպաստները՝ վնասները արգիլեցին կամ դարմանեցին։

**1359.** Մաղաքիա վարդապետ Ղրիմեցի, եղելութեանց պարագաներէն ստիպուած, և Ունիթորներու չահատակութիւններէն գրգռուած, խիստ կերպով զանոնք զսպելու կը հետեւէր։

**ՂՐԻՄԵՑԻԻ ՄԱՀԸ**

Միաւամի կը գիտէր աւելի նախանձայոյզ գործիչները և իբր հասարակ խռովարարներ աշխարհական դատարանի առջեւ կը հանէր, ծախք չէր խնայեր, բուռն միջոցներէ չէր քաշուեր, այնպէս որ սարսափ ազդեր էր անոնց նախանձայոյզներուն վրայ։ Անոնք ալ իրենց կողմէ սաստկութեան միջոցներու ձեռնարկեցին։ Նախ փորձեցին ամբաստանութիւններ գրել Հռոմի Ուրբանոս պապին, որ առանց արեւմտեան հերձուածին գրգռումներուն ալ (§ 1355), դըժուար թէ կարենար ազդեցութիւն գործել իրեն չհպատակող Հայերուն վրայ։ Տեսնելով որ Ղրիմեցիին ազդեցութենէն ազատելու կերպ մը չեն գտներ, և իրենց անոր դէմ գործած հակառակութիւնները արդիւնք չեն ունենար, ձեռք առին նոյն իսկ Մաղաքիայի սահմանայր եղող կին մը, որ ունիթորութեան աշակերտած էր, և համոզեցին թէ հռոմէական եկեղեցւոյ նուիրական յաջողութիւն պիտի ըլլայ անոր մահը։ Մաղաքիա Երնջակի Քարագաշտ գիւղին մէջ, կերակուրի սեղանին վրայ մեռաւ, թեղակոյ եղեւ է տանատէրն խորձ յողորմայէ (ՄԵԾ. 16)։ Մխիթար Ապարանցի ջերմ Ունիթոր, որ առաջ Մաղաքիայի աշակերտած էր, կ՚ըսէ թէ յանկարծամահ մեռաւ կերակուրի վրայ, և եւ համբաւ թէ Ունիթորք փեղեւ էցեն ընդ (ԶԱՄ. Գ. 449)։ Մեզի կը բաւէ որ ուրող կարծիքին Ունիթոր մըն ալ վկայէ, իսկ հերքելու փաստ մը չցուցներ։ Մաղաքիա Ղրիմեցին իւր տեսակին մէջ յատուկ դէմք մըն է, ազնուականութիւնը և հարստութիւնը ճգնաւորի խստամբերութեան փոխանակող, որ զամենայն ժամանակս կենաց իւրոց, հայկական եկեղեցական կեանքին մէջ, մի ու եկեր և ծախէ ու եւրք, որ Սուրբ Սարգսի տանէն մինչէ ի Վարդավառին ջուր ու եւրք, որ է մեծի պահոցն՝ կիւրակէն է կիւրակէ մին փոխջուր ծախէր, որ մինչ ի տուրն ղփեցեւ էր, որ հող տաղուկոց, փշոտ ճիւղերով, դառեւ էր ընդդեմ խոր, և այս խստամբեր կեանքը կը վարէր, ոչ թէ անապատ քաշուած ու աշխարհէ հեռացած, այլ աշխարհի ամէնէն բուռն և սաստիկ զբաղանքներուն և տագնապներուն մէջ։ Իրեն զգացումներն ալ ոչ այնչափ հեզութեան համամէտ, իշխանական հով մը կը պահէին եկեղեցականութեան ներքեւ ալ, և ոն ընդ ոյն օրէնքին հետեւելով, մոլեռանդ Ունիթորներուն դէմ կը դարձնէր, ինչ որ անոնք ազգային եկեղեցւոյ հաւատացեալներուն դէմ կը գործէին։ Մաղաքիայի մահը ճգնաւորի և մեծ նախանձայոյզի փառքին հետ նահատակի պսակն ալ աւելցուց իւր վրայ, զի զոհ գնաց իւր անկոպար եկեղեցասիրութեան և ազգային հաւատարմութեան։ Մահը տեղի ունեցաւ 1384 թուականին, իսկ օրը անորոշ է մնացած։ Յովհաննէս վարդապետ և Մատթէոս աբեղայ, որ Մաղաքիայի պատանումը կատարած են, ուզած են անոր մարմինին վրայ գտնուող քուքերը իբր մասունք պահել, բայց Որոտնեցին չէ ներած, և միասին թաղել տուած է Ապրակունեաց վանքին մէջ (ՄԵԾ. 16), որուն մօտ քիչ ետքը ինքն ալ պիտի թաղուէր։

**1360.** Կրկին անգամ դարձաւ Լէնկթիմուր Հայոց կողմերը, և 1386՚ին ներքին գաւառներէն ելնելով, նորէն իջաւ դէպ ի Պարսկաստան և Ատրպատական, անկէց դէպ Սիւնիք, և

**ԴԱՐՁԵԱԼ ԼԷՆԿԹԻՄՈՒՐ**

Հեղեղօրէն յառաջացաւ մինչեւ Երնջակ, Կարբի, Բջնի, Կողբ, Գառնի, և Սուրմարի (ՍԱՄ. 171) որ Սուրբ-Մարի ալ գրուած է (ՄԵԾ. 17)։ Այնչափ ահաւոր էր արշաւանքին վախը, որ ամէն կողմէ ժողովուրդները լեռներու անառիկ կիրճերը և անմատոյց գագաթները կ՚ապաւինէին։ Մարտիրոս Կողբացի տանուտէր մը, իւր երկրացիները Բարդող լերան վրայ հանեց, և ողբեցոյց մեծաւ պատերազմաւ և որդովքն գերութեամբ (ՄԵԾ. 18)։ Այդ միջոցին պէտք է դնել Որոտնեցիին ալ Մար գիւղի բարձունքը

ապաւինիլը, այլ ոչ եթէ Որոտնէ (ՍԱՄ. 170), այլ Ապրակունիքէ փախչելով՝ Երընջակի պաշարման պատճառով (ՄԽԾ. 17)։ Մեծոփեցին կը պատմէ, թէ Կաղզուանու Վարդիկ-Հայր վանքի միաբաններէն երկուքն ալ Գետարգել Ս. Նշանը ազատելու համար գաղտնի կը թաղեն, բայց երկուքին ալ սպանուելովը, տեղը անյայտ կը մնայ, և գանելու համար եղած ջանքեր և հետազօտութիւններ անպտուղ կը դառնան (ՄԽԾ. 18)։ Միայն թէ 15 տարի ետքը 1401'ին գրուած յիշատակարանի մը մէջ, Յովհաննէս և Թովմաս և Կիրակոս աբեղաներ, կը վկայեն թէ վերոյին Թոփեցոյ վանուց Նշանն Գետարգել, և թէ յանձնեցին Վարդպատրիկի Ս. Եղիշէի ուխտը, որ է այժմեան Ոստանի Զաղար Ս. Նշանի վանքը (ՓԻՐ. 15)։ Բջնայ մէջ ալ ամրոցին գրաւուելէն ետքը կը նահատակեն տեղւոյն Վանակ (ՁԱՄ. Գ. 422) կամ Վանական եպիսկոպոսը, որ էր այր իմաստուն և գիտնական, ուղղափառ և գիտող ամենայն աղանդոց (ՄԽԾ. 19)։ Լէնկթիմուրի արշաւանքները ոչ միայն աւերած և կոտորած կը սփռէին, այլ հաւատուրացութիւնը իբր ազատութեան պայման առաջարկելով, պատճառ կ'ըլլային որ քաղցած նահատակութեան հասին և պսակաց արժանացան։ Այս նպատակով իրենց հաւատքին հաստատուն եղողները չարչարէին տանջանօք, սովով, սրով, գերութեամբ, անդադար չարչարանօք և անագորոյն բռնաւք (ՄԽԾ. 13), զոր աւելի մանրամասնելով Շահապունեցի յիշատակագիր մը կ'ըսէ. Ոմանք հրով կիզայրեաց տանջեալք, և այլք ի սովոյ գաղանաբեկ վը-տանգեալք. կէսք [illegible] տանջեալք և առհասարակ անթաղ ընկեցեալք (ՁԱՄ. Գ. 421), իսկ նահատակուողներուն թիւը Գրիգորէ Աստուծոյ ծերոյ ծայն է գէ-տեղ կ'ըսէ ժամանակակից պատմիչը (ՄԽԾ. 19)։ Լէնկթիմուր Վրաստան ալ կ'արշաւէ, Տփղիսի բնակիչները կը կոտորէ, այնպէս որ ողանեան յուղի էր տան Թէ ազրեան, և Սեփաննոս Փիր վարդապետ հոգին կ'աւանդէ ծաղկազարդ եղեալ ի ողանճանէ։ Բագարատ վրաց թագաւորը, կը կարծէ ընծաներով ազատիլ, այլ հաւատքն ալ վրայ տալու կը հարկադրուի, թէպէտ առ երեսս. սակայն ձմեռը հասած ըլլալուն, Լէնկթիմուր ձմեռելու համար Արցախ կը քաշուի, որ է Ղարաբաղ (ՄԽԾ. 20), կամ որ նոյն է նախնի Մուղանու դաշտը (ՍԱՄ. 171), Բագարատն ալ մէկտեղ տանելով։ Իսկ նա կեղծեալ պատրաստականութեամբ, Լէնկթիմուրէ մեծ բանակ մը կ'ուզէ որ անոր հնազանդեցնէ ամբողջ Կովկասի ութը ցեղերը, որ են Վրացի, Ափխազ, Իմէրէլ, Մէկրէլ, Օսէզ, Սօնք, Մեսխ ու Դրալ։ Գունդերը առնելով ճամբայ կ'ելլէ, և գաղտնի իւր Գորգի, Կոստանդին ու Դաւիթ որդիներուն լուր կու տայ պատրաստ գտնուիլ, և իւր ձեռքը եղած բանակը, ի Նեջատոյն և ի կոծան փեղկս առաջնորդելով, 12,000 հոգիէ աւելի ջարդել կու տայ, և ինքն ալ լեռնային կողմեր ապաւինելով կ'ազատի (ՄԽԾ. 20)։ Ի թուղ տարւոյն՝ յառաջոյ առաջ զարկէն, որ 1387'ին ապրիլ 7'ին կը հանդիպէր, Լէնկթիմուր Մուղանէ Սիւնիք կ'իջնայ և անկէ կը դիմէ Հայաստանի հարաւային գաւառները։

**1361.** Այս տեղ հարեւանցի յիշենք թէ ուղիղ չէ ոմանց 1387 տարին ծռազատիկ կարծելը (ՁԱՄ. Գ. 423), որուն պատճառ եղած է թերեւս վերջին 1292 տարւոյ ծռազատիկէն (§ 1191) 95 տարի հաշուելը, որ է ծռազատիկներու պարբերական շրջանը։

ԾՌԱԶԱՏԻԿ ԶԵՂԱՒ

Սակայն այդ պարբերականը հաստատուն չէ, այլ միջոց մը այն կը խախտի նահանջներու յառաջ բերած տարբերութեամբը, և 532 տարիներու շրջանին մէջ միայն չորս ծռազատիկներ տեղի կ'ունենան, և 247 տարիներու միջոց մը առանց ծռազատիկի կ'անցնի։ Ըստ այսմ 1292'է ետքը նոր ծռազատիկի պիտի հանդիպինք 1539'ին։ Արդէն ալ յիշեցինք, թէ 1287'ին զատկի կիրակի օրը, ոչ թէ ապրիլ 6'ին կը հանդիպէր՝ ինչպէս պէտք էր ըլլար ծռազատիկ կազմելու համար, այլ ապրիլ 7'ին։

**1362.** Հայաստանի հարաւային կողմերը երկու գլխաւոր ամիրայութիւններ կազմուած էին վերջին ատենները, զորս ժամանակակից ազգայիններ Թուրքմանի տէրութիւններ կը կոչեն, այլ և Մարաց պետութիւն կ'անուանեն (ՄԽԾ. 27), և Թուրք անունն ալ կու տան

ԼԷՆԿԹԻՄՈՒՐԻ ՑԱՂԹՈՒԻԼԸ

(ՄԵԾ. 29)։ Մէկուն կեդրոնն էր Սասունի լեռներուն վրայ, և միւսինը Ամիթ կամ Տիարպէքիր քաղաքին մէջ, և համացեղ լինելով ալ՝ իրարու հետ թշնամութեամբ էին։ Ընդհանրապէս հովիւ ժողովուրդ էին, և մեծութիւննին ոչխարներու հօտերը ըլլալուն, անոնցմէ կ'առնէին իրենց անունը, հիւսիսայինները Գարաքօյունլու և հարաւայինները Աքքօյունլու, իբր սեւ ու ճերմակ ոչխար ունեցողներ։ Երկուքն ալ ժամանակին սովորութեան համեմատ բազմաթիւ փոքրիկ իշխանութիւններու համախմբութիւններ էին՝ գերիշխան պետի մը գլխաւորութեան ներքեւ։ Հիւսիսայիններու պետն էր Յուսուփ՝ Սասունի մեծ ամիրայն, որ Գարա-Եուսուֆ ալ կը կոչուի, և իրեն գլխաւոր հպատակներէն էին Գարա Մէհմէտ՝ Արճէշի, և Շէյխ Շէրիֆ՝ Խոյթի ամիրաները։ Իսկ Աքքօյունլուներու պետն էր Օսման, որ և Օթման կը հնչուի։ Լէնկթիմուր առաջ Գարա Մէհմէտի վրայ քալեց, որ մինչեւ Ծապաղջուր փախաւ, բայց ետ դառնալով զարկաւ Լողմաղան թաթար զօրավարին գունդը (ՄԵԾ. 21)։ Ասպատակին մեծ ճիւղը կը յառաջէր դէպի Տարօն, այս պատճառով ճանպուն վրայ եղող Արճէշ և Մանազկերտ և չուրջը եղող ժողովուրդը դէպի Գլակայ վանքը վազեց, Ս. Կարապետի երկնային պաշտպանութեան ալ ապաւինելով։ Տեղւոյն եպիսկոպոսն Աբգար, և Յակոբ ճգնաւոր վարդապետ, և այնտեղ ապաւինող Ներսէս Մեծոփայ եպիսկոպոս և Ստեփանոս Արճիշեցի վարդապետ, և Թովմաս Մեծոփեցի պատմիչ վարդապետն ալ, որ և ես է Ներս կոյէ կ'ըսէ (ՄԵԾ. 23), հոգեւորով և մարմնաւորով կը խնամէին և կը քաջալերէին փախստականները։ Իսկ Յուսուփ մեծ ամիրայն Տարօնի ժողովուրդը փութացուց Սասունի լեռները բարձրանալ, Շէյխ Շէրիֆին յանձնելով զայն դէպի Խալթ քշել Բանաբնեամբ և Հալածելով, զի տէրճոտանէջն ապաստանելով ու կոչէին ելանել է յԵրկոսն Խութոյ և Սասնոյ, բայց վերջէն համոզուեցան թէ ստիպումը նախախնամական եղաւ (ՄԵԾ. 22)։ Յուսուփի Թիւրքմէններն ալ Քրիստոնէից Աստուծոյն կը դիմէին, եզ մը մատաղ կարելով Առաքելոց վանքի ուխտարանին, և իրօք ալ յաջողեցան վանել Լէնկթիմուրի ասպատակը, և բէկեալ խորտակեցաւ զօրութիւն Զաղաթայէն, մինչեւ իսկ 2,000 հոգիէ աւելի՝ սաստիկ չփոթութենէն գահավիժելով մեռան, և Մարաֆ անուն Թուրքման մը 100 հոգի սպաննեց Թաթարներէն։ Մեծոփեցի պատմիչը կը գրէ, թէ Կարապետ Մեծոփեցի կրօնաւորը, որ էր փեսեալ զփեսայն, իրեն պատմէր է թէ երբ ողբասկոփայլ որ հեծեալ է ողբոյ ՅԷ, գոյն է կերպոյ օրոյ և էջեալ խառնեցան է զօրս Թոտրմանէն (ՄԵԾ. 24), այնչափ անակնունելի և հրաշալի եղած էր Լէնկթիմուրի յաղթուիլը։ Թաթարներ չկրնալով լեռներէն վեր արշաւել, դէպի Վասպուրական դարձան, Բաղէշի ամիրային հպատակութիւնը ընդունեցին, Արծկէէ շատ գերի առին, որոնց հետ էր Կարապետ Ջուղայեցի արեղան, որ գերիներու հոգեւոր մխիթարիչը, և վերջէն եպիսկոպոս ալ եղաւ Սմրղանդ տարուած քրիստոնէից համար (ՄԵԾ. 28)։

**1363.** Արտաճմլիկ և զարմանալի տեսարանի մը յիշատակը պահած է Մեծոփեցին,

ՄՇԵՑԻ ՔԱՋՈՒՀԻՆ

զոր պէտք չէ որ մենք ալ զանց ընենք յիշել։ Այդ անհաղին խուճապին մէջ, որուն մատնուած էին Տարօնցիք, Թաթարներուն հանելուն պատճառով, երբ ամէն ոք ծակամուտ կը պահուէր քարայրներու և մայրաներու մէջ, աւելի զգալի էր կիներուն տագնապը, որոնք մահէն աւելի գերութեան և բռնաբարութեան և խէնէշ ցանկութեանց զոհ երթալէ կը վախնային, հաւատքնին կորսնցնելու ալ վախով։ Մուշի գաւառէն կէն մի երկեալ և Հասաւորէն, եօթը ութը տարեկան էերէ զԵրեսս Հրեշտակէ գեղեցկագէմ մանչ զաւակը ձեռքէն բռնած, սուր մըն ալ առած իբր պաշտպանութիւն, կը վազէր զառիվեր Խոյթի լեռները փախչողներուն ետեւէն։ Յանկարծ կը տեսնէ զի հետապնդող Թաթարներ գոյն զինէ և մերձենայէն, և այլեւս փախուստի հնարաւորութիւն չունէր։ Միաքին առջեւ պատկերացան յանկարծ կրելիք ըլլանքը և որդուն ապագայ աղէտը, և բորբոքեալ զգացումներուն բուռն թափով, սուրը հանեց, չինեալ զորդին ցանկալի, և մօտ եղող Բարձրաանգամ ժայռէն է վեր ընկեց զինքն, փառաւորելով զանուն Յիսուսի Քրիստոսի,

ւէ քէհան ըհօգի ֆօհօօլիէամբ (ՄԵԾ· 26)։ Որդեսպան մայր մը և անձնասպան կին մը չէ հնար կարծել այդ Քաջուհին, զոր Մեծոփեցին կը բաղդատէ որդին ողջակիզելու պատրաստ Աբրահամին, և եօթը զաւակները մահուան տուող Շամունէին, և անոնց գերազանց առաքինութեան համահաւասար կը գտնէ Մշեցի կնոջ քաջութիւնն ալ։ Որչափ ալ բորբոքեալ երեւակայութեան մէկ վայրկենին մէջ կատարուած ըլլան կրկնակ բռնադատութիւնները, սակայն եռանդուն հաւատքի, հաստատուն առաքինութեան, և նախանձայոյզ համոզման արդիւնք է այն զօրաւոր որոշումը, որով մայր մը ձեռքը կը մխէ իւր զաւկին արիւնին, և ինքն իւր մահով կը պաշտպանէ իւր հաւատքն ու պարկեշտութիւնը։ Ընդհանուր ըմբռնման մէջ ալ աւելի մեծ քաջութիւն մը ճանչցուած չէ՝ քան թէ հաւատքին, առաքինութեան, հայրենիքին և ընկերին սիրոյն՝ իւր կեանքը զոհել։ Մշեցի կնոջ ըրածն ալ այս է։ Մեծոփեցին որպէս զի յայտնէ թէ երէքօյօօլիէամբ կամ կօրծեօ+ պատմութիւն մը չէ ըրածը, կը յաւելու թէ Գլակէ Մուշ գալով հարցափորձած է զըէօօղըն և ըլըօղըն, և իրողութիւնը ստուգած է։ Անունով ալ կը յիշէ Առաքելոց վանքին առաջնորդ Բարթողիմէոս վարդապետին եղբայր Դաւիթ աբեղայն (ՄԵԾ· 27), որ հարկաւ ճանպու վրայ գտնուած և եղելութիւնը աչքովը տեսած է, այլ դժբախտաբար կնոջ ով ըլլալը և անունը չէ կրցած իմանալ, որով մենք ալ չկրնալով անունը յիշատակել՝ Մշեցի Քաջուհի կոչելով կը գոհանանք (ՄԵԾ· 129)։ Առաքելոց վանքին միաբաններուն յիշատակուիլը, մտածել կու տայ թէ Տիրնկատարի սարին վրայ տեղի ունեցած է Քաջուհիին գործը, և իրօք ալ այդ կողմէն է ճանպան՝ որ Մուշէ Սասուն կը տանի։

**1364**. Միեւնոյն 1387 տարին տեղի ունեցաւ Սեբաստիոյ եպիսկոպոս Ստեփանոսի և երկու ընկերներուն նահատակութիւնը, բայց ոչ Թաթարներու երեսէն։ Սելճուքեանց հատուածներէն Սեբաստիոյ մէջ կը տիրէր Պուրհանէտտին ամիրայ, որ իշխանութիւնը ձեռք ձգած էր նախորդ ամիրան սպաննելով (ՆՈՐ· 137)։ Զօրամիօ և յանգօօգն մարդ մը, ամենուն առելի եղած էր իւր խօտօօրգօոլիեան և ամբօրգաանօոլիեան համար, և միշտ կասկածոտ ու դաւաճանութիւններէ վախցող էր, նոյն իսկ Թուրքերուն կողմէն։

ՍՏԵՓԱՆՈՍ ՍԵԲԱՍՏԱՑԻ

Զարախօսներէն ոմանք Ստեփանոսի անունն ալ խառնեցին, և այդ պատճառով բոլոր Ս. Նշանի վանականներուն ձերբակալութիւնը հրամայուեցաւ։ Ստեփանոս աղաչանքով և կաշառքով պաշտօնեաները հաճեցուց ամէնքը չտանիլ, և գոհացան ձերբակալելով Ստեփանոս եպիսկոպոսը, և միաբանութեան երիցագոյններէն Սեղբեստրոս և Թորոս աբեղաները։ Ամիրան ֆան ամօօնօյէն փօլօյն, և թերեւս ապահովութեան համար ալ, Ազշար լեռը հովանոցի գացած էր, և հոն տարին ձերբակալեալները, և քննութիւնը յանձնուեցաւ դատաւորին։ Ստեփանոս զօրաւոր կերպով պաշտպանեց իրենց անմեղութիւնը, բայց ամիրային կողմէ ուրացութեան հրաւիրուեցաւ ազատութեան արժանանալու համար։ Այս անգամ եպիսկոպոսը արիութեամբ խոստովանեցաւ իւր անյողդողդ հաւատքը, քրիստոնէութեան և իսլամութեան վրայ ալ ակնարկներով և բացատրութիւններով, ինչ որ զայրացուց Պուրհանէտտինը, և մահուան վճիռ արձակեց Ստեփանոսի, ինչպէս նաեւ աբեղաներուն դէմ, որոնք ձայնակից էին իրենց եպիսկոպոսին (ՆՈՐ· 141)։ Երբոր գլխատման տեղը տարին, դահիճը երկու անգամ զարնելով չկրցաւ վիզը կտրել, ինչ որ կախարդական զօրութեան վերագրուելով, ձեռքէն ոտքէն բռնելով եպիսկոպոսը գետինը տարածեցին, մէջքէն կտրեցին և անդամները յօշոտեցին, և ետեւէն Սեղբեստրոս և Թորոս աբեղաներն ալ գլխատեցին։ Մարմինները անթաղ թողուեցան, բայց քրիստոնեայք յաջողեցան վերցնել և գաղտնի թաղել (ՆՈՐ· 143)։ Միայն ներուած էր գլուխը վերցնել և քաղաք տանիլ հօրը ցուցնելու համար, որուն յօօ օրէնով օէրօն է ֆօրէն, և մայրն ըօյր օղըրմօգէն, երբ փէօօօ ըըրըէն յօյն հօյէն (ՆՈՐ· 150)։ Նահատակութեան օրը նշանակուած է յունիս 23 (ՑԱՍ.Ա. 268), որ էր Լուսաւորչայ կիրակին, իսկ որովհետեւ յունիս 26 ալ գրուած կայ (ՆՈՐ. 148), յարմար է զայն պատշաճեցնել գլուխը

հօրը ցուցուած օրին, որ ըստ երեւութին բռնուած է (ՆՈՐ. 150)։ Ստեփաննոս տարիքոտ պիտի ըլլայ, ինչ որ կը հետեւցնենք ոչ միայն հօրն ու մօրը տակաւին կենդանի ըլլալէն, այլ և յառակապէս յիշուելէն թէ նա ծնեալ էր ի նորա ծնողաց յերեսէն (ՆՈՐ. 150), ինչպէս կը գրէ անոր յիշատակին ձօնուած զգայուն տաղին հեղինակը, անշուշտ Աստուածոյ Ս. Նշանի միաբաններէն մէկը։ Ուրհանէտային Ստեփաննոսի նահատակութենէն ետքը, Ս. Նշանի վանքը հրամայած է կողոպտել, նոյնպէս ուրիշ վանքեր ալ, և Ձորայ վանքին առաջնորդ Միքայէլ վարդապետը 36 աշակերտներով չատ չարչարելէն ետքը գլխատել տուած է։ Իսկ ինքն վերջէն Օսմանեանց սուլտան Պայազիտ Եըլտըրըմին ձեռքն ինկած և չարաչար սպանուած է (ՁԱՄ. Գ. 432)։

**1365.** Լէնկթիմուրի արշաւանքին դառնալով, Տարոնի ձախողութիւնը զայն չընկճեց, այլ ընդհակառակն

**ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ԿՈՏՈՐԱԾԸ**

աւելի սաստիկ զայրոյթով Վասպուրական քալեց, ամէն կողմ այրեաւերելու, քանդելու և արիւնաշաղախ կոտորելու նպատակով։ Առաջ Արծկէ եկաւ, և տեղւոյն ամիրայն Սահանդ անուն, միջնորդներով և ընծաներով հպատակութիւն յայտնեց, ուստի յոյժ սրբեցեալ եղեւ, և այս պատճառաւ աւերեցաւ երկիրն եւ մնաց ի խաղաղութեան (ՄԵԾ. 29)։ Սահանդի իշխանութիւնն ալ ընդարձակեց (ՄԵԾ. 29), և հաւանաբար սա ինքն է Սահաթ ամիրայն, որ Մարտիրոս Կողբացի քաջ տանուտէրը (§ 1360) նահատակեց, Երասխի մէջ խեղդել տալով (ՄԵԾ. 18)։ Լէնկթիմուր Արծկէէ անցաւ Տոսպ գաւառը, բայց տեղւոյն ամիրայն Եզդին անուն (ՄԵԾ. 30), կամ ըստ այլոց Փիրի-Պէկ (ՁԱՄ. Գ. 424), ընդդիմացաւ, և ամենայն զօրօքն եւ բազմութեամբ հեծելոց Վանայ անառիկ ամրոցին մէջ փակուեցաւ (ՄԵԾ. 30)։ Սակայն պաշարնին պակսեցաւ, և 40 (ՄԵԾ. 30), կամ 25 օր պաշարումէ ետքը, պարտաւորուեցան տեղի տալ։ Թէպէտ ամիրայն խոնարհեցաւ, սակայն Լէնկթիմուրի ցասումը չիջաւ, և զայրոյթով գրաւեց բերդը յաւուր հինգշաբթուն, յաւուր տօնից Սուրբ Խաչին (ՍԱՄ. 171)։ Պահքէ օրն կամ պահքէ օր կը կոչուին չաբաթապահքները Նախընթաց եօթնեակները, երբ կամաւոր չաբաթապահքեր, և ըստ այսմ Խաչի չաբաթապահքին Նախընթաց հինգշաբթի նշանակուած օրը կ'ըլլայ 1387 սեպտեմբեր 5։ Լէնկթիմուր հրամայեց կին ու տղայ գերի պահել, իսկ բոլոր այրերը զառաջեալսն եւ զանձառակս ի բերդէն ի վայր ընկենուլ, այսինքն է Վանայ քաղաքին վրայ բարձրացող սեպաձեւ գագաթէն վար հոսել։ Այնչափ բարձրացաւ դիակոյտը, մինչ զի վերջին ակնէալքն ոչ մեռանէին (ՄԵԾ. 30), որոց թիւը եօթն հազար մարդ կը հաշուուի (ՍԱՄ. 171)։ Եւ կ'երեւի թէ կոտորածը ա՛լ աւելի չատ եղած պիտի ըլլար, եթէ ձայնէ մի, որ է երգեցող, քաղաքին մինարայն ելլելով Ղեամանի ալա, այսինքն աշխարհի վերջին կոչը չհնչեցնէր, ուսկից Լէնկթիմուր սթափելով՝ կոտորածը կը վերջացնէր նոյն օրը (ՄԵԾ. 31)։ Այդ տեղ ալ Մեծոփեցին ականատեսներու վկայութիւնը կը յիշէ, որ են Զաքարիա արքեպիսկոպոս և Պօղոս վարդապետ, որոնք ի բերդին լինելով, ազատուեցան վերջը մնալով, և Թաթար իշխանի մի գերի տրուելով, որ գիր տուեալ բանին ֆերմանն ալլայ արար (ՄԵԾ. 31)։ Ձմեռնային եղանակին վրայ հասնելուն, Լէնկթիմուր նորէն իր երկիրը դարձաւ, արշաւանքին արդիւնքը աւարն ու գերիները մէկտեղ տանելով, և անցած տեղերէն իր անգթութեան հետքերը թողլով, այնպէս որ ասերցեն ամենայն երկիրս Հայոց, յԱրճիշոյ մինչեւ Տանն Վրաց և մինչեւ ի Կուր գետն։ Աւերածին և կոտորածին հետեւանքն եղաւ սաստիկ սովը, որ փորձեցաւ յամենայն տեղիս, և այնպիսի սաստկութեամբ, զի կերան զշունս և զկատուս, և երբ անոնք ալ սպառեցան, խորովէին զտերեւս և զծառս, թէպէտ և այդ անբնական կերակուրներէն ուտողներն ալ յետոյ ինքեանք մեռանէին (ՄԵԾ. 32)։ Սովին տեւողութիւնն երկարեցաւ, և յաջորդ 1388 և 1389 տարիներուն ալ չարունակեց, և Մեծոփեցին որ այդ կողմերը կ'ապրէր, լալագին կը նկարագրէ ընդհանուր խեղճութիւնը։

**1366.** Կ'երեւի թէ այդ ցաւալի կացութիւնը այնչափ ծանր չէր Սիւնիքի և շրջակայից մէջ, զի Ուռնիթորներ մէկ կողմէն,

և Ապրակունեաց ու Աստապատի վանքերը միւս կողմէն, իրենց նպատակին կ'աշ-խատէին և կրօնական մրցումները կը շարունա-կէին։ Թէպէտ Գրիմեցին մեռած էր, բայց անոր կարգադրածն ու թողածը տակաւին կը բա-նէին, և Որոտնեցին Ապրակունեաց վանքի և Ապրակունեցին Աստապատի վանքը առաջ կը տանէին իրենց վանական և ուսումնա-կան գործունէութիւնը, բազմաթիւ և զար-գացեալ աշակերտներ պատրաստելով ազ-գային եկեղեցւոյ պաշտպանութեան հա-մար։

**ՈՐՈՏՆԵՑԻԻ ՄԱՀԸ**

Չորրորդ տարին էր Նախանձայոյզ Մաղաքիայի մահուընէն՝ երբ վախճանեցաւ Որոտնեցին, իր կենաց 73'րդ տարին թե-ւակոխելէն ետքը։ Ծանր աշխատութիւնն̀ե-րը և ժամանակին եկեղեցականին՝ բուն ու-մորական եղող կենցաղական խստութիւն-ները մաշեցուցած էին անոր մարմինը։ Նա իր արդիւնաւոր կեանքը կնքեց 73'րդ տարին լրացուցած օրը, որը օրին Նաւա-սարդ 30'ին, Հայոց 837 թուին, որ այն տարին կ'իյնար 1388 յունուար 13'ին, Աս-տուածայայտնութեան ութօրէքին, որ ան-շուշտ չփոթմամբ յունուար 6'ին բուն տօ-նին օրին հետ փոխանակուած է (ՑԱՑ. 302), վասնզի այն տարին յունուար 6'ը Նաւա-սարդի 23'ին կը հանդիպէր և ոչ 30'ին։ Իսկ օրը օրին հանդիպումը լոկ Հայոց հին տոմարով կ'արդարանայ, զի ծնած տարին Նաւասարդի 30'ը կ'իյնար յունուար 29'ին (§ 1351)։ Նաւասարդի 30'ին միեւնոյն օր ծննդեան ու մահուան զուգադիպութիւնը ճշմարտուած էր Սահակ Պարթեւի վրայ (§ 222), և Մեծոփեցին այդ նմանութիւնը յի-շելով կ'աւելցնէ, թէ այս է օրինաւոր մահ մարդոյ երկոտանեաց (ՄԽԾ. 17)։ Սակայն կը տարբերի Թլկուրանցիին տուած թուականը, է յամենայն Հայոց թուական, ընդ որս և հինգ եօթն յաւելուն, յամենայն մին դառն յայտնու-թեան, լոյս աւետեան խաչելոյն, յետ վեց ա-ւուրցն խաչման, ծնեալ ամ Տէրն իւր անձինեան (ՓԻՐ. 36)։ Ըստ այսմ 1386 յունուար 1'ին հիւանդացած և յունուար 6'ին վախճանած պիտի բլլար, սակայն միւս հաշիւր չամե-րէն արուածն է, և միայն Թլկուրանցիին վկա-յութիւնը չբաւեր զայն խախտելու։ Որոտնե-ցին թաղուեցաւ Ապրակունեաց վանքը, Գրիմեցիին գերեզմանին մօտ (§ 1359)։ Իրմէ մնացած գրական աշխատութիւններն են, Յովհաննու աւետարանին և Պօղոսի թուղթերուն մեկնութիւններ, բազմաթիւ քարոզներ, և Փիլոնի ու Արիստոտէլի ու Պորփիւրի փիլիսոփայական գիրքերուն վրայ բացատրութիւններ։ Անշուշտ օտար լեզու-ներու, և գլխաւորապէս լատիներէնի՝ ալ հմտացած էր, Ունիթորներու արուեստակ-եալ վարդապետութեանց դիմադրելու հա-մար։ Նոյնը կրնանք հաստատել Ապարան-ցիին բոլորէն ալ, թէ Որոտնեցին առաջնորդը հաւան ցուցանէր զինքն ընդ առաջնորդութեան մեր (ԶԱՄ. Գ. 450), ինչ որ միայն արեւմտեան ուսումներուն հետեւած ըլլալը կրնայ ցու-ցնել։ Բայց Որոտնեցիին գլխաւոր արդիւնքն ու փառքն եղած է, գլուխ և նախահայր նկատուիլ այն բուռն պայքարին, զոր ազ-գային եկեղեցւոյ վարդապետները մղեցին Ունիթորներու լատինամոլ ձիգերուն դէմ, ամուր թումբ մը կազմելով հոսանքին հան-դէպ, որ հակառակ զօրաւոր ջանքերու պարտաւորուեցաւ յետս ընկրկիլ, օտարը տկարացաւ և Հայ եկեղեցին իր ինքնու-թիւնն ու խնութիւնը պահեց։ Այդ բազ-մերախտ վարդապետներ ամէնքն ալ Որոտ-նեցիին աշակերտներն կամ աշակերտներուն աշակերտներն են, այնպէս որ առաջին և մեծ արդիւնքը աններկայ կերպով պիտի վերագրուի Յովհաննէս Որոտնեցիի։ Ուստի իրաւամբ ըսուած է, թէ պայծառացոյց զեկեղ-Հայոց վարդապետօք և տօնախմբօք, գեղեցիկ կարգաւորութեամբ և աղօթս պաշտօնութեամբ, մանաւանդ որ և գեղեցիկ մատուցեալ ընդդէմ երկաբնակաց ապիրատութեան փաստաւն Երզնկա-յու։ Մեծոփեցին անոր մահը յիշած ատեն կ'աւելցնէ, թէ խաւարած եղեւ աշխարհս Հայոց (ՄԽԾ. 15), սակայն մենք պիտի ըսենք, որ թէպէտ ինքն պակսեցաւ, այլ իր վա-ռած ջահը բուական ատեն լուսաւոր մնաց իր աշակերտներուն ձեռքով, և անշէջ մնաց ազգային եկեղեցւոյ աւանդութեան մէջ։ Նորա արտաքինին համար ըսուած է, թէ էր մեծահամբաւ և բարեհամբաւ, չքեղ և փա-ռահեղ, իսկ ներքինին համար թէ էր հեզ բարոյ, ողորմած, աղքատասէր, խոնարհ յոյժ ամ-բոխից զօրացող, և ամենայն լցեալ շնորհօք

Առաքելոյ (ՅԱՑ·303), ուստի իրաւամբ եկեղեցին անոր անունը տօնելի սուրբերուն կարգը անցուց, թէպէտեւ չկարենանք ճշդել այդ սովորութեան սկիզբը։ Անոր տօնը մենք ալ կը կատարենք այսօր (ՏՕՆ·45), բայց պահ մը ընդհատեցաւ՝ ԺԹ՝րդ դարուն սկիզբները տեղի ունեցած միաբանական ջանքերուն առթիւ, եւ այս պատճառով Յայսմաւուրքի վերջին տպագրութիւնն ալ զանց ըրած է անոր յիշատակը։

**ՏԱԹԵՒԱՑԻՆ ԿԸ ՅԱՋՈՐԴԷ**

**1367.** Որոտնեցիին աշակերտներուն թիւը նշանակուած չենք գտներ, բայց անտեղի չէր ըլլար իրեն վրայ ալ մերձաւորաբար կրկնել, ինչ որ իր ուսուցչին Եսայի Նչեցիին վրայ ըսուած էր թէ 363 աշակերտներու վարդապետական գաւազան տուած է (§ 1241)։ Այդ բազմաթիւ եւ ընտրեալ խումբին գլուխը պէտք է յիշենք Գրիգոր Տաթեւացին, որ իր վարդապետին յաջորդեց, եւ գրեթէ զայն գերազանցեց։ Գրիգոր որդի էր Արճիշեցի Սարգիսի, որ երկրին աղէտից պատճառաւ անկէ գաղթած, եւ Փարպեցի աղջկան մը հետ պսակուած, բնակութիւն հաստատած էր Վայոցձոր գաւառին հաւանաբար համանուն աւանին մէջ։ Այն տեղ ծնած է Գրիգոր, քանի մը վաղամեռիկ զաւակներէն ետքը ուխտի զաւակ (ՅԱՑ·531)։ Տարին չէ նշանակուած, բայց հաշուելով որ 14 տարեկան Որոտնեցիին աշակերտած (ՅԱՑ·532), եւ 28 տարի անոր մօտ մնացած է (ՄԵԾ·33), 1346'ին եղած կ'ըլլայ ծնունդը։ Քահանայական ձեռնադրութիւնը առած է Որոտնեցիին հետ Երուսաղէմ գացած ատենը, վարդապետական գաւազանը Որոտնեցիէ ստացած է Երզնկայի մէջ, իսկ ծայրագոյն գաւազանը անազան ընդունած է 1387'ին Որոտնեցիին վերջին տարին (ՅԱՑ·532), եւ 1388'ին յաջորդած է անոր, հաւանութեամբ եւ կամօք մեծ վարդապետին Սարգսի Ապրակունեցւոյ եւ համօրէն եղբարց իւրոց (ՄԵԾ·17), ինչ որ ընտրական գործողութիւն մը կը ցուցնէ, եւ Գրիգորի վկայեալ արժանիքը կ'ապացուցանէ։ Գրիգոր երկու տարի միայն մնաց Ապրակունեաց վանքը յաթոռ վարդապետութեան ուսուցանելոյ, մինչ երթալով կը նուաճէին վանքին միջոցները եւ կը տկարանար անոր դիրքը, այնպէս որ վերջին ձմեռը պարտաւորուեցաւ սակաւ աշկերտօք անցընել ի յԱպրակունեաց Հնձան, եւ 1390 տարւոյ ի գարնան եղանակին փոխադրուեցաւ Տաթեւի վանքը, ուր իրեն պաշտպանութիւն եւ ձեռնտուութիւն կը խոստանային իշխանն Սմբատ Օրբելեան որդի Իւանէի եւ թոռն Բուրթէլի (ՄԵԾ·33), եւ թոռնորդի Ելիկումի (§ 1175), եւ արքեպիսկոպոսն Առաքել, Գրիգորի քեռորդին (ՄԵԾ·51), կամ լաւ եւս քեռոյին որդին։ Այն տեղ Գրիգոր հաւաքեց ժողովեաց զբազում աշակերտս, եւ նոր զարկ տուաւ Տաթեւի դպրեվանքին, որ եղաւ այն մեծ հաստատութիւնը, որ լուսաւորեաց զազգս մեր ճշմարիտ եւ ուղղափառ դաւանութեամբ եւ հաւատով (ՄԵԾ·33), եւ ուստի յառաջ եկաւ ազգային եկեղեցւոյն մէջ գտնուող այժմեան վարդապետական դասակարգը։ Սովորութիւն էր վարդապետական վկայականներուն մէջ յիշել իրարմէ գաւազան ստացողներուն շարքը, եւ վերջին դարերու վկայականներ միշտ նախ Գրիգոր Տաթեւացւոյն սկզբնաւորութեամբ կը գրուէին, եւ անոր զանազան աշակերտներէն տարբեր ճիւղեր կը կազմուէին (ԴԱՎ·340), որով ներկայիս մեր եկեղեցւոյն բոլոր վարդապետները Գրիգոր Տաթեւացիի բարոյական սերունդը կը նկատուին, եւ Որոտնեցիին իսկ անունը չյիշուիր, ու Տաթեւացին ընդունուած կ'ըլլայ իբրեւ վարդապետութեան նահապետ, կամ Մեծոփեցիին բացատրութեամբ՝ երկնաբուղխ ծաւալեալ աղբեւրն, անմար արեգակն, եւ երկրորդ լուսաւորիչն (ՄԵԾ·17)։

**ՍՈՒԽԱՐՈՒ ՎԱՆՔԸ**

**1368.** Սարգիս Ապրակունեցի Աստապատի վանքն էր տակաւին, երբ Գրիգոր Ապրակունեաց վանքին մէջ հաստատուեցաւ, բայց ինքն անկէ առաջ թողուց իր տեղը, ի նոյն ամ դառնութեան, որ է 1388'ի սովին տարին (§ 1355)։ Սարգիս պարտաւորուեցաւ Աստապատը թողուլ, եւ Հեր կամ Խոյ քաղաքին մէջ սակաւ աշակերտօք անցոյց զաւուրս անձին դառնութեան նեղութեանն, եւ քիչ մը կացութիւնը մեղմանալէն ետքը իր աշակերտներէն Յովհաննէս Սաղաղ վարդապետը ճանպայ հանեց, որ Հայաստանի ներսերը յարմար տեղ մը գտնէ նորէն դպրեվանք մը կազ-

*մեռաւ։ Բաղիշեցի կամ Արճէշի եպիսկոպոս Զաքէոս, ցուցուց անոր Խառաբաստ գիւղի մօտ, Սուխարու Ս. Աստուածածին վանքը։ Մեծոփեցին որ միշտ ուսուցիչներու և երազներու փաստերով կը գնահատէ եղելութիւնները, Յովհաննէսն ալ տեսիլքով համոզուած կ՚ըսէ Սուխարու վանքին յարմարութեան վրայ, Սարգիսն ալ նոյն փաստով իւր որոշումը տուած* (ՄԵԾ. 36), *և 1389՚ին եկած հաստատուիլ այն տեղ, և* է ճրագ ուղղափառաց և է կրօնաւորաց և յառաջնորդաց, առնել տուն ճշմարիտ *կարգաւորներ հաւաքելով, նոր և զարգացուն աշակերտութիւն մը կազմել, և Վասպուրականի լճեզերեայ գաւառները մխիթարել* ուսմամբ և գիտութեամբ, ծանօթ և պատուական (ՄԵԾ. 37)։ *Սուխարու աշակերտութենէն է ինքն Մեծոփեցի պատմիչն ալ, որ չափազանց կը բարձրացնէ իւր վարդապետին արժանիքը, թէ* հեզութեամբ և խոնարհութեամբ ու գոլով նման նմա յորդոր Աստուծոյ, *և թէ միանգամայն* պերճ կերպարանաց էր ահաւորեալ և զարմացուցանէր զամենայն մարդ, մանաւանդ զդէմս այլազգեաց, մինչ զի ասէ Զօրութիւն յերկրպագութեան գոյին նմա (ՄԵԾ. 36)։

**1369.** *Աստապատի և Ապրակունեաց վանքերուն նուազիլը պատճառ եղաւ, որ Գրիգորի և Սարգիսի համաշխարհիկ կամ աշակերտակից վարդապետներ անոնցմէ բաժնուին, և իրենք ալ*

**ՈՒՐԻՇ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ**

*աստ և անդ ցրուելով զատ զատ վանքերու մէջ հաստատուելով նոր աշակերտութիւններ կազմեն, և Որոտնեցիին հիմնած գործը ընդարձակեն։ Այս տեղ այն տեղ տեսնուած ցրիւ յիշատակները հաւաքելով կը տեսնենք նախ Յակոբ վարդապետը, որ Այրարատի մէջ Կարբի գիւղի մօտ գտնուող Սաղմոսավանքը սկսաւ շէնցնել* (ՄԵԾ. 33)։ *Գէորգ վարդապետ, չփոթմամբ Գրիգոր գրուած* (ՄԵԾ. 33), *Երզնկա գնաց, և այն տեղ աշակերտութիւն հաստատեց և լաւ երկասիրութիւններ ալ պատրաստեց, թէպէտ ճշդուած չենք գտնար թէ Երզնկայի բազմաթիւ վանքերէն որն եղաւ Գէորգ Երզնկացիին հաստատուն տեղը։ Յովհաննէս վարդապետ Բաջբերունեաց գաւառէն, Զարիշատի Ներսէս քահանային ուխտի զաւակը, Նահապետ աբեղայի մօտ առաջին ուսումն առնելէն և Ներսէս եպիսկոպոսէ քահանայ ձեռնադրուելէն ետքը, Ստեփանոս աբեղայի մը հետ Ապրակունեաց վանքը եկան Որոտնեցիին աշակերտիլ։ Երեք տարի մասնաւոր զաւազան ստացան, բայց մեծ վարդապետութիւնը չկրցաւ տալ Որոտնեցին իւր մահուան կանխելովը, և Տաթեւացին տուաւ։ Յովհաննէս քիչ ետքը* եկաւ ի հայրենի տունն իւր, ի սուրբ ուխտն Մեծոփայ վանս, յառաջ նոր կերտեալ (ՄԵԾ. 56)։ *Տարին նշանակուած չէ, բայց որովհետեւ արդէն Սարգիս Սուխարու մէջ աշակերտներ հաւաքած կը յիշուի, գոնէ* 1391՚ին *պէտք կ՚ըլլայ դնել Յովհաննէսի Մեծոփ դառնալը, և այդ ենթադրութեամբ նոր կիրակին կը հանդիպի ապրիլ* 2՚ին։ *Իսկ Մեծոփի հռչակաւոր տաճարին շինութեան սկզբնաւորութիւնը աւելի ուշ տեղի ունեցած է* 1402՚ին (ՄԵԾ. 58)։ *Որոտնեցիին աշակերտներէն կը յիշուին նաեւ Ստեփանոս Դարացի* (ՄԵԾ. 47), *որ հաւանաբար վերոյիշեալ Ստեփանոսն է՝ Յովհաննէս Մեծոփեցիին հետ աշակերտութեան գացողը։ Վարդան Հոգոցեցի* (ՄԵԾ. 49), *այն որ յետոյ Ապրակունեցի Սարգիսին յաջորդեց Սուխարու վանքին մէջ, և Յակոբ Ովսաննացի որ նահատակուեցաւ։ Ուրիշ շատ մը վարդապետներու անուններ ալ ունինք, որոնք յետոյ Տաթեւացիին և Ապրակունեցիին մօտ ալ մնացած ըլլալնուն, անխտիր անոնց և անոր աշակերտներ կը կոչուին, և վերջին կը թողունք անոնք յիշատակել։*

**1370.** *Երբ մէկ կողմէն Հայ եկեղեցին գիտութեամբ զօրաւոր վարդապետներով կը պայծառանար, նոյն իսկ արտաքին տագնապներու և հալածանքներու ներքեւ, միւս*

**ԱՒԱԳ ԲԱՂԻՇԵՑԻ**

*կողմէն ուսմամբ տկար բայց հաւատքով զօրաւոր զաւակներն ալ իրենց կեանքով և արիւնով կը պաշտպանէին եկեղեցին։ Կոտորածներու մէջ սպաննուածները ճշմարիտ մարտիրոսներ էին ընդհանրապէս, զի իսլամական մոլեռանդութիւնը ամէն մէկուն կ՚առաջարկէր ուրացութիւնը իբրեւ ազատութեան միջոց, իսկ Հայ քրիստոնեայն կը նախընտրէր իւր կեանքը դնել քան իւր*

սուրբ հաւատքը։ Մասնաւոր մարտիրոսներու ալ յիշատակներ պահած են մեզի ժամանակակիցներ, որոնց հիմը միշտ կեղծ կամ սուտ կրօնափոխութեան պարագայն է, հետեւանք մահմետական օրէնքին՝ որ խոստովանութենէ ետ դարձողը մահապարտ կը վճռէ։ Աւագ անուն քահանայ հասարակ արհեստաւոր մը, բնիկ Բաղէշ քաղաքէն, երիտասարդութեան ատեն Սալմաստ գացած և Պարսիկներու մօտ աշխատած էր, առանց քրիստոնէութիւնը թողլու, և վերջերը իր քաղաքը դառնալով արհեստին կը հետեւէր։ Երեսուն տարի անցած էր Սալմաստ երթալէն, երբ այն տեղէ եկող Պարսիկ մը զայն կը տեսնէ շուկային մէջ, և կը զրուցէ թէ նա ժամանակով Պարսիկներուն մօտ խոստովանած էր, իսկ Աւագ կը պնդէ. Ես քրիստոնեայ էի և եմ և եղէց (ՆՈՐ. 158)։ Այսչափը կը բաւէ որ խաժամուժը գլուխը ժողվուի, և ուղղակի Ամիրշարաֆ ամիրային առջեւ հանէ իբրեւ խոստովանութիւնը ուրացող։ Ամիրայն կը լսէ և կը տեսնէ թէ բաւական վկաներ չկան ամբաստանութիւնը հաստատելու, և կ'ուզէ արձակել, բայց ժողովուրդին ստիպման վրայ վճիռը դատաւորին կը թողու։ Մոլեռանդներ կասկածելով որ մի՛ գուցէ այն տեղ ալ վճիռ չտրուի, Աւագը կը ստիպեն ու կը չարչարեն տարած ատեննին, և անոր հաստատամիտ պատասխաններէն զայրանալով՝ քարերով ու բիրերով ու զէնքերով վրան կը յարձակին, և վերջապէս ջախջախեալ կոճէր զուղեղն և զոսկերս գլխոյն, և դատաւորին չտարած, ճամբան սպաննեցին։ Աւագի վկայութեան օրը եղած է 1390 մեհեկի 17, որ պէտք է սարկաւագիր տոմարով փետրուար 23'ին հաշուուի, զի գրուած է թէ եղաւ յաւուր չորեքշաբթի յերկրորդում շաբաթու քառասնորդաց պահոց (ՆՈՐ. 154), ինչպէս տոմարական հաշուով ալ կը ստուգուի։ Աւագ սովորաբար Բաղիշեցի կը կոչուի (ՅԱՍ. Ա. 93), բայց Սալմաստեցի ալ ըսուած է (ՆՈՐ. 152), երկար ժամանակ Սալմաստ ապրած ըլլալուն համար։

**1371.** Յիշենք եւս Եղիսաբեթ վկայուհին, բնիկ Արճէշի Խառաբաստ գիւղէն, բայց կ'երեւի թէ Սուխարու վանքին ազդեցութիւնը չէր զգացած, զի [illegible] կեանք կը վարէր, Բերկրիի մէջ տաճկացեալ էր. և Վանայ մէջ կը հետեւէր գործոյ պոռնկութեան, և անյագ էր ի դմա։

**ԵՂԻՍԱԲԵԹ ԽԱՌԱԲԱՍՏԵՑԻ**

Օր մը վիճելու ատեն խօսքը հաստատելու համար, Սուրբ Աստուածածին վկայ, կ'ըսէ, որ այս բանս այս է (ՆՈՐ. 157)։ Սուխարու Ս. Աստուածածնի մանկական յիշատակն էր, որ բերնէն կը թռէր։ Շուրջը եղողներ վրան կը յարձակին, թէ զի՞նչ էիր դու ասել։ Յանկարծական արիութիւն մը կու գայ Եղիսաբեթի վրայ և համարձակօրէն կը պատասխանէ. Ասեմ և ոչ ամաչեմ, զի ես ծառայ եմ Սուրբ Աստուածածնին։ Ոչ միայն Ազգին թաթար ամիրայն ու դատաւորը, այլեւ ամիրային կինը Փաշախաթուն կոչուած, աղաչանալիք և աղօքանք կը գործածեն Եղիսաբեթը տարհամոզելու, սակայն չեն յաջողիր, նա հաստատուն կը մնայ իր արիւնով աղա՛ղի կեանքը սրբելու միտքին վրայ, և քարկոծուելով կը նահատակուի 1391'ին Քառասնից յիշատակին օրը ըստ յայսմաւուրաց (ՆՈՐ. 168), այսինքն մարտ 9'ին։ Թէպէտ յայսմաւուրքը Եղիսաբեթ Խառաբաստեցիին յիշատակը կը դնէ ապրիլ 24'ին, Թամար Մոկացիի յիշատակին կցելով, յաւուր տօնի սրբոց Քառասնից պարագան ալ անտեսելով, որ նոյն օրուան վրայ չհամարուիր (ՅԱՍ. Ա. 183)։

**1372.** Թէոդորոս կաթողիկոսի հազիւ թէ աթոռ բարձրանալը յիշեցինք (§ 1354), և մէյ մըն ալ առիթ չունեցանք անոր անունը տալ։ Պատմական դէպքեր մեզ արեւելեան երկիրներուն մէջ պահեցին, Կիլիկիայի մասին գրելիք չունեցանք, զի իրօք ալ այն կողմերը ընաւ եղելութիւն չկար՝ որ մեր մտադրութիւնը գրաւէր։ Եգիպտական սուլտանութիւնը իր նպատակին հասած, քրիստոնեայ պետութեանց վերջինը պաշտօնապէս ջնջած, նոր արշաւանքներու առիթ չունէր, միւս կողմէն Արեւելքէն հասնող Լէնկթիմուրեան հեղեղը զինքն կը ստիպէր ամփոփ մնալ, որեւէ պատահականութեան հանդէպ։ Այս պատճառով Կիլիկիոյ թագաւորութեան բեկորներէն կազմուած, Տաւ-

**ՀՌՈՄԷԱԿԱՆ ՄԻՏՈՒՄՆԵՐ**

*րոսի և Ամանոսի ժայռերուն մէջ պահուըտող Հայ իշխաններն ալ, աւելի խաղաղ վիճակ կը վայելէին, և անկէ օգտուելով Կոստանդին Կիլիկեցին ալ Թագաւորի պիտակ անունով* (§ 1349) *իր գլխաւորութիւնը կը պահէր լեռներու մէջ ցրուած Հայերուն վրայ։ Այդ պարագաներուն մէջ մեծ գործունէութիւն մը հնար չէր սպասել որեւէ կաթողիկոսէ, որ մենք ալ կարենայինք գործունեայ պաշտօնավարութիւն մը պահանջել Թէոդորոսէ, որուն ուր մնացած և ուր նստած ըլլալն իսկ ճշդելու դժուարութիւն կը կրենք։ Որոշակի ալ չգիտենք թէ ինչ ուղղութիւն կը տիրէր այս միջոցին Կիլիկիոյ մէջ կրօնական տեսակէտէն։ Մեծոփեցին միայն ունինք, որ Սսոյ վերջին վեց կաթողիկոսներուն ժամանակը ամէնէն սեւ գոյներով նկարագրած, և անոնց անկարգ և ապօրէն և գարշելի գործերը մեղադրած ատեն, այդ ամէնը կը վերագրէ անոնց լատինամոլ ուղղութեան և կը գրէ. մանաւանդ զի Հռովմայեցւոց էր խմոր աղանդաւորութեանն, քաղկեդոնական տունն* (ԿՈՍ. 55)։ *Այդ վեցերուն առաջինն է Թէոդորոսը, և պէտք կ'ըլլայ նոյն կարծիքն ունենալ անոր վրայ ալ։ Մենք բաւական յստակ կերպով տեսանք թէ Պօղոս լատինասիրութեան շատ հակամէտ մը չէր* (§ 1344), *բայց արդէն հայադաւան և հայածէս եկեղեցին, դիտմամբ կամ պատահմամբ, որոշմամբ կամ սովորութեամբ զանազան կէտերու մէջ լատինականի մօտեցած էր և լատինամօտ հով մը կը տիրէր Սսոյ աթոռին վրայ։ Յայտնի եղելութիւն մըն է, թէ հակառակ Արեւելեան վարդապետներու ճիգերուն, հակառակ Տուտէորդիներու և Օրբէլեաններու, Որոտնեցիներու և Տաթեւացիներու ընդդիմադիր ջանքերուն, լատինամօտ միտքեր և ծէսեր և ձեւեր մուտք գործած էին, և ոմանք մինչև այսօր ալ կը մնան ազգային եկեղեցւոյն մէջ, և տակաւին թօթափելու քաջութիւնը չերեւիր։ Լատինամոլութեան մեծ ազդակը, այն է Լատիններու օգնութեամբ քաղաքական դիրքերնին պահելու ակնկալութիւնը, պէտք էր այլեւս իսպառ ջնջուած ըլլար Հայերուն միջէն, վերջին Լեւոնի վերջէն ետքը։ Բայց սեւեռեալ գաղափարներ դժուարաւ կը ջնջուին, և մինչև յետին դարեր Կիլիկեցւոց միջէն իսպառ չհեռացան Արեւմուտքէն օգտուելու նպատակը և Արեւմուտքը հաճեցնելու գաղափարը։ Հետեւաբար անհիմն չկրնար ըսուիլ Մեծոփեցիին գրածը, թէ լատինամոլներ էին Սսոյ վերջին կաթողիկոսները, այլ ոչ տիրապէս լատինացեալներ կամ կատարեալ հռոմէադաւաններ, ինչպէս նոր հայկաթոլիկներ կը սիրեն պնդել։ Հայ եկեղեցին երբե՛ք իր ինքնուրոյն և բնատիպ իսկութիւնն կորսուած չէր։ Այս բանիս իբրեւ հաստատութիւն պէտք է նկատել որ նոյն իսկ Որոտնեցին ու Տաթեւացին և բոլոր Տաթեւեան աշակերտութիւնը, չէին վարանիր Սսոյ վերջին կաթողիկոսները իբր ճշմարիտ և օրինաւոր հայրապետներ ճանչնալ, ինչ որ ըրած չէին ըլլար եթէ կատարեալ հռոմէադաւաններ եղած ըլլային Սիս նստող վերջին կաթողիկոսները։*

**ԹԷՈԴՈՐՈՍԻ ՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ**

**1373.** *Այս տեսութիւններով մէկտեղ մենք պիտի չհամարձակինք բացարձակ կերպով մեղադրել Թէոդորոսը, և զայն կատարեալ աղթարմաներուն շարքը անցնել։ Առ այս մեր գլխաւոր հիմնակէտն են Թէոդորոսի սպանութիւնն և սպանութեան շարժառիթը, Մեծոփեցիին գրածին համեմատ, թէ զՍսոյ կաթողիկոսն տէրն և վեց տանուտէրքն սպանին նենգաւորութեանն քրիստոնէից Սսոյ ձեռն Մելիք Օմարն* (ՄԵԾ. 71)։ *Մենք այս կտորին մէջ քրիստոնէից անունով լատինամոլները ակնարկուած կ'իմանանք, վասնզի Մեծոփեցիին միտքն է օտարներու վրայ նետել կաթողիկոսին մահուան պատճառը։ Եթէ իրեններուն վրայ խօսիլ ուզէր, պէտք էր ուրիշ դարձուած գործածէր, և տարբեր կերպով որակէր նենգամիտ մատնիչները։ Արդ եթէ Մեծոփեցիին ուղղութենէ օտարներ էին Թէոդորոսի մահուան պատճառ եղողները, ուրեմն աղթարմաներու դասակարգէն էին, ուրեմն Թէոդորոս անոնցմէ չէր, ուրեմն Թէոդորոս ալ Պօղոսի նման քիչ ու շատ հայադաւան և հայածէս ուղղութեան հետեւող էր։ Ըսուած չէ թէ նենգամիտ քրիստոնեաներու զրպարտութիւնը ինչ էր, բայց* 16 *տանուտէրներու կամ իշխաններու ալ միասին սպանուիլը, բաւական է հե-*

տեւցնելու, թէ քաղաքական խնդիր էր յուզուածը, և թէ Հայոց կաթողիկոսին և իշխաններուն վրայ եղած ամբաստանութիւնը, քաղաքական խլրտումի և Եգիպտացիներուն դէմ ելլելու գոյն ունէր, որ ամիրային անմիջապէս ամէնքը մէկէն սպաննելու կ'ելլար, իբրեւ մեծ դաւաճանութիւն մը արգելելու նպատակով: Ամիրան գրգռողներուն՝ Ներսէս Բալիենցի վերագրուիլը կը ցուցնէ, թէ անհիմն էր պատճառանքը, բայց բռնութեան միջոցին և բռնաւոր իշխաններէ, ոչ անաչառ քննութիւն կը սպասուէր, և ոչ արդար դատաստան: Իսկ մէլիք Էօմէրը, պէտք է Սսոյ ամիրայն ըլլայ, այլ յայտնի չէ թէ ժառանգական իշխան մըն էր, թէ ոչ յատկապէս ղրկուած կողմնակալ զօրավար մը: Սսոյ վերջին կաթողիկոսներ Մեծոփ'ցիէ ամբաստանուած են թէ իրարու ձեռքէ աթոռը յափշտակելու համար, իրար սպաննած են թէղ ծածկախմցնելով (ԿՈՍ. 55), ինչ որ թերեւս չպատշաճի Թէոդորոսի սպանութեան, բայց եթէ ենթադրելով թէ իրեն յաջորդն ալ քսու խմբակէն մէկն էր, և թէ այս քսութեան պատճառով Թէոդորոս 16 իշխաններու հետ և ամիրայի հրամանով սպանուած է, ինչպէս նոյնինքն Մեծոփեցի յայտնի կը վկայէ (ՄԵԾ. 71): Գործը կրնար աւելի ուրիշ կերպարան ունենալ, եթէ լոկ Շարունակողին գրածովը մնայինք, թէ ըսէր Թէոդորոսն է Սէս-ոտանէն (ՍԱՄ. 172): Սպանութեան թուականը Մեծոփեցիի գրելովը 1393'ին յանցեալ ամն է (ՄԵԾ. 71), որ է 1392, և նոյնը կրկնած է յիշատակարանին մէջ ալ Հայոց 841 թուականը դնելով (ԿՈՍ. 55), և այդ կրկին յիշատակութիւնները մեզի համար՝ բաւական են պատմական թուական մը հաստատելու: Ուստի զանց կ'ընենք զննել Շարունակողին Հայոց 842 տարին յիշելը (ՍԱՄ. 172), և ուրիշ յիշատակարանի մը 844 տարին է հայրապետութեան տեառն Թէոդորոսի կարծելը (ՓԻՐ. 6), որ գրիչի կամ տպագրութեան սխալ մըն է, և կամ Բաբերդցի յիշատակագիրին Կիլիկիոյ մէջ անցած դարձածէն լուր չունենալուն հետեւանքն է: Չենք գիտեր նոյնպէս թէ ինչ աղբիւրէ քաղած են ուրիշներ ալ 1389 թուականը (ՍԻՍ. 560), դուցէ համեմատութեան դնելով նոյն տարին Ներսէսի կամ Յովհաննէսին դէպ արեւելք դիմելը, և Եգիպտոսի սուլտան Բարկուկին Կիլիկիոյ կողմերը արշաւելը:

# Տ. ԿԱՐԱՊԵՏ Ա. ԿԵՂԵՑԻ

1374. Թէոդորոսին յաջորդին ընտրութիւնը ոմանք տարի մը կը յետաձգեն, սակայն այդ մասին որոշ ակնարկ մը չենք գտներ ժամանակակիցներուն մէջ, և կը կարծենք թէ այդ կարծիքը յառաջ եկած է Կարապետի կաթողիկոսութեան 1393 թուական նշանակուելէն (ՍԱՄ. 172), որով Թէոդորոսի մահուընէ տարի մը ետքը եղած կ'ըլլայ: Սակայն միեւնոյն տեղը Հայոց թուականը 840 ցուցուած է, որ կը պատասխանէ 1391'ին և Թէոդորոսի մահն ալ 842 դրուած է, այսինքն 1393'ին, որ իրարու չեն կապակցիր, և այդ կողմէն որոշ փաստ չկազմուիր: Միւս կողմէն ալ 1393'ին Կարապետ կաթողիկոսը յիշողներ, ընտրութեան թուական չեն տար, այլ նոյն թուականին կաթողիկոս գտնուիլը կը յիշեն: Այդ պատճառներով մենք պատճառ մը չենք գտներ Կարապետի կաթողիկոսութիւնը տարի մը յետաձգելու: Էօմէր ամիրան ալ նոր կաթողիկոսի հաստատութեամբ նիւթական օգուտի առիթ կ'ունենար, և ուշացնելու դրդիչ չունէր: Հետեւաբար ոչինչ չարգելեր որ Կարապետի կաթողիկոսութիւնը 1392'ին դնենք, անմիջապէս Թէոդորոսի սպանութենէն ետքը, ոչ թէ կանոնաւոր ընտրութեամբ, որուն պարագաներ նպաստաւոր չէին, այլ նոյն ինքն Կարապետի առջեւ նետուելովը, պաշտօնէներ ալ ճարելովը և ամիրան գոհացնելովը: Կարապետ բսուած է Կեղեցի է Խորշէնոյ (ՉԱՄ.

**ՆԱԽԸՆԹԱՑՆ ՈՒ ՊԱՇՏՕՆԸ**

ՑԱԻ. 110), և թէպէտ աղբիւրը ցուցուած չէ, այլ կը պահենք իբրև յատուկ անուն մը, որ մեր կարծեօք օգտակար է անձերը զատելու։ Բայց եթէ ծննդեամբ Կիլիկեցի չէր, անշուշտ առաջին տարիքէն Կիլիկիոյ մէջ ապրած և հայրապետանոցին մէջ յառաջացած էր։ Շարունակողը զայն կը կոչէ տէր Կարապետ՝ Բոկիկն (ՍԱՄ. 172), որ ժողովրդական հնչումով Բոքիկ ալ կ'արտասանուի։ Անյայտ կը մնայ այդ կոչումին իմաստն ու ծագումը, և չենք կարծեր թէ՝ խստամբեր կեանք ունեցող, բոկոտն շրջող կամ ռոկ ու խեղճ ապրող մէկ մը եղած ըլլայ։ Այսպիսի առաքինութիւն կամ կենցաղ Կիլիկիոյ հայրապետանոցին ընտանի չէր այդ միջոցին։ Աւելի հաւանական է կարծել թէ խեղճ, բոկիկ ու բոկոտն, Կեղեցի պանդուխտ տղայ մըն էր, հայրապետանոցին մէջ պատսպարուած և հետզհետէ յառաջացած ու բարձրացած, Եսայի Եղիպատրուշեցիի նման մէկ մը (§ 614)։

**1375.** Աւելի կարեւոր է քննել Կարապետի անձին վրայ կատարուած կրկնումը, որով մէկ Կարապետը երկու Կարապետ կաթողիկոսներու վերածուած է,

ԿԱՐԱՊԵՏՆԵՐԸ ԵՐԿՈՒ ՉԵՆ

և Կարապետ Ա և Կարապետ Բ անուններով երկու կաթողիկոսներ ցուցակի անցած են։ Այդ թիւրիմացութեան մեզի ծանօթ հնագոյն կազմողը Դավրիժեցին է, որ իր ցուցակին մէջ գրած է. ՊԽԴ թ. տէր Կարապետ. ՊԽԶ թ. տէր Դաւիթ. ՊԾԲ թ. միւս տէր Կարապետ (ԴԱՎ. 336)։ Ետքէն եկողներն ալ իրեն հետեւած (ՉԱՄ. Գ. 428), և բոլոր վերջին գրողներ նոյն դրութիւնը ընդունած են։ Այլ մենք հնագոյն աղբիւրներու դիմած ատեննիս, շուտով տեսանք թէ թիւրիմացութիւն մը տեղի տուած է այդ մասին մէջ։ Շարունակողն որոշակի և կրկին անգամ գրած է, տէր Կարապետ Բոկիկն ամս երկոտասն (ՍԱՄ. 172), որով Հայոց 852'էն ետքը եղող Կարապետը միեւնոյն 844'ին կաթողիկոս գտնուող Կարապետը եղած կ'ըլլայ, և այլեւս երկու Կարապետներու տեղի չմնար։ Որպէս զի մեր տեսութիւնը աւելի յայտնի ըլլայ, պէտք կ'ըլլայ թիւրիմացութեան ծագումն ալ ցուցնել։ Անոնք որ երկու Կարապետներու միջանկեալ Դաւիթ մը կը դնեն, անոր պաշտօնին տեւողութիւնը կը դնեն 1397'է 1403 տարիներու մէջ։ Այդ միեւնոյն տարիներու պատկանող յիշատակարաններ, Կարապ'ետ անունով կը յիշեն ժամանակին կաթողիկոսը, այսպէս 1400'ին կը գրուի, ի Հայրապետութեան Կիլիկեցւոց տէր Կարապետի (ՓԻՐ. 11), 1401'ին ի Հայրապետութեան Կիլիկեցւոց տէր Կարապետի (ՓԻՐ. 14), և 1402'ին ի Կաթողիկոսութեան Հայոց տէր Կարապետի (ՓԻՐ. 18), և եթէ այդ տարիներուն Կարապետ տակաւին կաթողիկոս էր, Դաւիթի մը տեղի չէր մնար։ Սակայն այդ միջոցին Դաւիթ կաթողիկոս մը կար, բայց ոչ թէ Սսոյ այլ Աղթամարայ մէջ, նոյն ինքն 1393'ին նահատակուող Զաքարիայի եղբայրն ու յաջորդը։ Աղթամարայ կաթողիկոսները սովոր էին համարձակ Հայոց կաթողիկոս կամ հայրապետ կոչուիլ, մանաւանդ իրենց վիճակային գրողներու կողմէ, զորօրինակ, ի կաթողիկոսութեան Հայկազեան սեռի տեառն Դաւթի (ՓԻՐ. 18), կամ ի Հայրապետութեան տեառն Դաւթայ (ՓԻՐ.24), կամ պարզապէս ի Հայրապետութեան տեառն Դաւթի (ՓԻՐ. 14։ Այդ կոչումներն են որ առիթ տուած են նոյն միջոցներուն Դաւիթ կաթողիկոս մը ենթադրել, և հետեւապէս Կարապետը միջակտուր ընելով երկուքի վերածել։ Մեր տեսութիւնը իւր վերջնական հաստատութիւնը կը գտնէ այն վկայութիւններով, ուր Կարապետ և Դաւիթ միասին կը յիշատակուին միեւնոյն ժամանակ, մէկը Սիս և միւսը Աղթամար նստած։ Այսպէս 1400'ին գրուած է, ի Հայրապետութեան Կիլիկեցւոց տէր Կարապետի, և ի Հայրապետութեան Ռշտունեաց որ յԱղթամար կղզի, Դաւթի եղբօր տեառն Զաքարիայի (ՓԻՐ. 11), և 1401'ին ի Հայրապետութեան տէր Դաւթի Աղթամարայ, և ի Կիլիկեցւոց տէր Կարապետի (ՓԻՐ. 14), և 1404'ին, ի կաթողիկոսութեան Հայկազանց սեռի տեառն Կարապետի Կիլիկեցւոյ, և ի միւս հայրապետութեանս տեառն Դաւթի Աղթամարայ (ՓԻՐ. 23)։ Այդ վկայութիւններն ու բացատրութիւնները այլեւս վարանման տեղի չեն թողուր, սովորական ցուցակներուն Դաւիթ Դ'ը, բոլորովին վերցնել, և Կարապետ Ա և Կարապետ Բ կաթողիկոսներու տեղ միակ Կարապետ Ա Կեղեցի, մականուն Բոկիկ, կաթողիկոս մը ընդունիլ, ինչ-

պէս որ բոլոր յիշատակներ ու յիշատակարաններ երկրորդ Կարապետի մը ներթադրութիւնը չեն ճանչնար։

**1376.** Անցողակի յիշեցինք Աղթամարայ Դաւիթ կաթողիկոսին նախորդին և եղբօր Զաքարիայի անունը։ Սա աթոռ բարձրացած էր 1378'ին, և մեծ փոյթ ունեցած էր իւր վիճակին զարգացման, և աթոռին պայծառութեան։

**ԶԱՔԱՐԻԱ ԱՂԹԱՄԱՐՑԻ**

Իւր օրով Սարգիս Սորբեցի վարդապետը, Նչեցիի աշակերտ և Որոտնեցիի աշակերտակից, ծաղկեցուցած էր Եգերով լերան վրայ գտնուող Ս. Գէորգ վանքը, որ Սարի Ս. Գէորգ կը կոչուի լերան գագաթը գտնուելէն, Փութկու Ս. Գէորգ ալ կ'ըսուի մերձակայ գիւղին անունէն, և շատ բանուկ կայան մը ըլլալուն, անցորդներ այնտեղ օթարան կը գտնէին, և աքաղաղի ձայնով փուքի ու փոթորիկի գուշակութիւն կը ստանային (ՕՕ. ԲԻԶ. 1194)։ Օր մը Ոստանի դատաւորը Ճաֆէր անուն (ՑԱՍ. Ա. 271), Աղթամար կու գայ և իւր մախաղը կաթողիկոսին աւանդ թողուլ կ'ուզէ, իսկ Զաքարիա նենգամիտ դիտումը գուշակելով տպահով տեղ չունենալը կը պատասխանէ։ Ասոր վրայ դատաւորը հերձոտելով մինչեւ իսկ կաթողիկոսը կ'ապտակէ, սակայն ուրիշներուն վրայ հասնելուն կը ստիպուի տեղի տալ, և որպէս զի պարտաւոր չմնայ, ինքն իւր երեսը սկրդելով և արիւնոտելով Ոստան կը դառնայ, և Աղդին ամիրային կաթողիկոսը կ'ամբաստանէ, երբ ամիրան քաղաքիքի մէջ կը հանգստանար։ Զաքարիան ալ ետեւէն կը հասնի դատաւորին դէմ գանգատելու, և ամիրային առջեւ դէմ դէմի կը գտնուին։ Ամիրան դատաւորին վկայութիւնը գերակշիռ կը համարի, և իրբեւ գործը վերջացնելու միջոց կ'առաջարկէ, դուշմէր յօլէնս մըր և եօ չըորհեմ դեղ գնոտ (ՆՈՐ. 173)։ Զաքարիա համարձակ կը պատասխանէ, իւր անպարտութիւնը կը հռչակէ, պարտաւոր եղած առենն ալ իւր սուրբ հաւատքէն չհեռանալը կը յայտարարէ։ Շուրջը գտնուողներ կը զայրանան քրիստոնէութիւնը փառաբանելուն վրայ, և առանց ամիրային հրամանին սպասելու, վրան կը յարձակին, կուշտէն կը վիրաւորեն, և քաղաքիքէն դուրս հանելով կը մերկացնեն, և վիզէն չուան անցընելով փողոցներ կը քաշկռտեն, մէկ կողմէն ալ կը քարկոծեն ու կը հարուածեն, մինչեւ որ փողոցի մէջտեղ հոգին կ'աւանդէ, օրթասընտան է բերանն, և բաշը խօտոզլանմալը մնեամէ (ՆՈՐ. 174)։ Աղդին ալ այս եղերական վախճանէն ազդուած, չներեր մարմինն անարգել, այլ կը հրամայէ Հայերուն՝ Թաղէլ գոտ ատիլ օրդես և կոմեոցէն, և անոնք ալ կը տանին և կը թաղեն Աղթամարի մէջ (ՑԱՍ. Ա. 272)։ Զաքարիա կաթողիկոսի նահատակութեան օրը նշանակուած է 842 մեհեկի 15, որ բուն տոմարով կը պատասխանէ 1393 յունիս 25'ին, չորեքշաբթի օր (ՆՈՐ. 176), մինչ Ցայսմաւուրքի մէջ նշանակուած յունիս 26 օրը (ՑԱՍ. Ա. 272) հինգշաբթիի կը պատասխանէ, և թերեւս թաղման օրն է։ Նահատակութեան տարին ոմանց մինչեւ 1396 յետաձգելը (ՉԱՄ. Գ. 434), գրչագիրներու չփոթութեան արդիւնք պէտք է սեպել։ Նահատակ կաթողիկոսին յիշատակը գովուած է իւր աշակերտներէն Գրիգոր Աղթամարցի տաղասաց վարդապետին յօրինած գանձ քարոզովը (ՆՈՐ. 177)։ Այս Զաքարիայի եղբայրն ու յաջորդն է Դաւիթ, որ 1393'ին պաշտօնի անցնելով մերձաւորաբար մինչեւ 1423 կաթողիկոսութիւն վարեց Հաւաքարանին համեմատ (ՕՕ. ԲԻԶ. 1195), թէպէտեւ յիշատակարանի մը մէջ 1430 թուականը կը տեսնենք (ՓԻՐ. 94), եթէ ընդօրինակութեան սխալանք չկայ, զի շատ երկարած պիտի ըլլար իւր պաշտօնը։ Սա է որ չփոթմամբ Սսոյ կաթողիկոսներուն ալ շարքն անցած է (§ 1375)։

**1377.** Սոյն այս 1393 տարին վերջին Լեւոնի մահուան տարին է, որուն Եւրոպա անցնելէն ետքը (§ 1356) այլեւս իրեն չհետեւեցանք, մեր պատմական շրջանակէն դուրս նկատելով, սակայն գոնէ հարեւանցի քանի մը տեղեկութիւններ աւելցնենք նիւթի ամբողջացման նպատակով, Լեւոն 1383'ին սկիզբները Աւինիոն հասած, մայիս 4'ին կղեմէս Է պապին մօտէն մեկնեցաւ, Արագոնայի և Կաստիլիոյ թագաւորներուն երախտագիտական այցելութիւն տալու։ Առաջ

**ԼԵՒՈՆԻ ՄԱՀԸ**

Արագոնիայի Պետրոս թագաւորին համառօտ այցելութիւն մը տուաւ, ու փութաց Կաստիլիոյ Յովհաննէս թագաւորին հանդիպիլ, որ մայիս 12'ին պիտի ամուսնանար, բայց Լեւոնի չհասնելուն պատճառաւ՝ մայիս 16'ին յետաձգեց և Լեւոն եղէւ կնքահայր նորա (ԴԱՐ. 191)։ Յովհաննէս Լեւոնի հետ պտոյտի ելաւ Սպանիոյ մէջ, և այդ միջոցին օգոստոս 14'ին Սեգովիոյ (Segovia) մայր եկեղեցւոյն մէջ Յովհաննէս Դարդէլի եպիսկոպոսական ձեռնադրութիւնը կատարել տուաւ հանդիսապէս (ԴԱՐ. 192), իսկ Լեւոնի շնորհեց Մադրիդ և Վիլլարէալ և Անդեխեր (Màdrid. Villa-real, Antequera) քաղաքները իբրև աւատ, և գումար մը Գաղղիա ուղևորելու համար (ԴԱՐ. 193)։ Լեւոն յիշեալ քաղաքներուն տիրանալէ ետքը ճամբայ ելաւ 1384 փետրուար 29'ին, և Նաւարրայի թագաւորին, Բէառնի կոմսին, Արագոնայի թագաւորին և Աւինիոնի պապին հանդիպելով յունիս 30'ին Պարիս (Paris) հասաւ, և մեծ պատուով ընդունուեցաւ Կարոլոս Ը Գաղղիոյ թագաւորէն։ Այստեղ կը փակուին Դարդէլի յիշատակները (ԴԱՐ. 199)։ Լեւոն Պարիսի մէջ առատ դրամական նպաստներ ստացաւ, և Սէնդուէնի (Saint-Ouen-sur-Seine) պալատն ալ իբր յատուկ բնակարան (ԲԱՍ. 105)։ Գաղղիոյ և Անգլիոյ վէճին առթիւ յանձնառու եղաւ Պարիսէ Լոնդոն բանագնաց երթալ, և 1385 նոյեմբեր 24 թուականով Անգլիոյ Հռիքարտոս Բ թագաւորին ապահովագիրը ստանալով (ԲԱՍ. 108) Լոնդոն անցաւ, բաւական աշխատեցաւ բայց հաշտութիւնը չգոյացաւ (ԲԱՍ. 116), թէպէտ Լեւոն նպաստներ և պարգևներ ստացաւ, և 1386 մայիս 20'ին Գաղղիա դարձաւ (ԲԱՍ. 119), և Կարոլոս Ը թագաւորին մտերիմ խորհրդականը եղաւ, և մինչև անոր մօտ ըլլալու համար Տուրնէլի (Tournelles) պալատը փոխադրուեցաւ (ԲԱՍ. 121)։ Հաշտարար բանակցութիւնները նորոգուեցան 1392'ին, և Լեւոն նորէն մասնակցեցաւ, թէպէտ առանց յաջողութեան (ԲԱՍ. 119)։ Լեւոն 1393'ին 51 տարեկան կ'ըլլար, բայց շատ տկարացած էր, անկողին ինկաւ Տուրնէլի պալատին մէջ, և մեռաւ նոյեմբեր 29'ին, որ շաբաթ օր մըն էր, և ոչ կիրակի (ԲԱՍ. 125), և թագաւորական պատիւներով թաղուեցաւ Սէնդընի (Saint-Denis) արուարձանը, Ս. Դիոնեսիոս եկեղեցւոյ արքունական դամբարանին մէջ։ Հին փառաւոր շիրիմին միայն պատկերը մնացած է (ԲԱՍ. 1), Գաղղիական յեղափոխութեան աւերածներէն ետքը։ Իսկ այժմ վրան արձանով, այլ մէջը դատարկ գերեզմանաքար մը միայն կը գտնուի Ս. Դիոնեսիոսի եկեղեցւոյն մէջ, զի ոսկրները խառնուած կը կարծուին Մօնրուժ (Montrouge) թաղի գետնափորներուն մէջ դիզուած ոսկրներուն հետ (ԲԱՍ. 145)։ Լեւոնի անձին և գործերուն վրայ բաւական խօսած ենք. Եւրոպայի մէջ անցուցած կեանքն ալ մեծ գովեստի առիթներ չընծայեր։ Իրաւ ամէն տեղ իբր քրիստոնէութեան համար զրկեալ և հալածեալ մը՝ մեծ պատիւ գտաւ, և Հայոց թագաւորութիւնը նորոգելու առաջարկով մեծամեծ գումարներ ձեռք անցուց, բայց իւր գովաբաններն ալ կը խոստովանին, թէ թէպէտ շատ դրամ կը հաւաքէր, բայց տանց խղճի խայթ ունենալու էր հանգոյցներուն կը ծախուէր շանոնք (ԲԱՍ. 106)։

**ՈՒՂՂԱՓԱՌ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ**

**1378.** Այդ միջանկեալ տեղեկութիւններէ ետքը նորէն Արեւելքի եղելութեանց դառնալով, Կարապետ կաթողիկոսի գործունէութեան մասին յիշատակ մը չենք գտներ։ Ոչ միայն կաթողիկոսական աթոռին ապիկարներու և անարժաններու ձեռք ինկած ըլլալը, այլ և նոյն իսկ Կիլիկիոյ անկեալ և քայքայեալ դիրքը, ամէն նշանակելի գործողութեան արգելք էր։ Կաթողիկոս եղողը, իւր ձեռք անցուցած լախտէն գոհ, զայն իւր դիւրութեանց գործածելէ աւելի մտածմունք չունէր, ազգին հանրութեան ու եկեղեցւոյն ամբողջութեան հետ ոչ յարաբերութիւն կը պահէր, և ոչ տեղեկութիւն ունէր, որ տառապեալ կացութեան դարմանը հոգար, արդէն եթէ հոգալ ալ ուզէր՝ գործելու ոչ միջոց ունէր և ոչ կարողութիւն։ Այն ամենատխուր կացութիւնը՝ զոր Մեծոփեցին կը պատմէ Սիս նստող վերջին կաթողիկոսներուն վրայ (ԿՈՍ. 56), հետզհետէ աճելով իր գագաթնակէտը պիտի հասնէր, սակայն արդէն Կարապետի օրէն գեղծումները սկսած էին և օրէցօր կը տարածուէին։ Երբ

*Կիլիկիա իր վերջնական անկումին կը դիմէր, Հայաստանի ներքին գաւառներ, նոյն իսկ արտաքին տագնապներու և տառապանքներու ներքեւ, գոհացուցիչ արդիւնքներ ցոյց կու տային: Որոտնեցիին ձեռնասուններն էին, որոնք աստ և անդ վանքերու մէջ, գլուխնին խումբ մը աշակերտներ հաւաքած, եկեղեցւոյ պաշտպանութեան գործիչներ, և ժողովուրդին առաջնորդող վարդապետներ կը պատրաստէին: Քաղաքական անկումին ներքեւ կ'աշխատէին գոնէ կրօնական անկումին առջեւն առնել, որ սպառնալից երեւոյթներ կը ստանար Կիլիկիոյ Աղթարմաներուն և Երնջակի Ունիթորներուն երեսէն: Սահակ-Մեսրոպեան դարուն երեւոյթն էր որ կերպով մը կը կրկնուէր: Այն ատեն Արշակունի թագաւորութեան դադարման և կրօնական հալածանաց քանութեան դէմ, Հայ դպրութիւնն ու երանաշնորհ Թարգմանիչներն էին, որ ազգին պահպանութեան ու պաշտպանութեան գրաւական կ'ըլլային. այս անգամ ազգային իշխանութեան վերջանալուն և ազգային եկեղեցւոյն դէմ լարուած նենգութեանց հանդէպ, վերանորոգեալ ուսումն և Ուղղափառ վարդապետներն էին, որ հայդաւան և հայածէս եկեղեցւոյն պաշտպան կը հանդիսանային:*

**ՏԱԹԵՒԱՑԻԻՆ ԳՈՐԾԵՐԸ**

**1379.** *Առաջինն ու գլխաւորը Տաթեւ էր, ուր Տաթեւացին եկած էր 1390'ին Ապրակունեաց վանքը թողլով (§ 1367), և ուր իրեն չուրջը հաւաքուած էին Որոտնեցիին վերջիններ և նորէն իրեն յարողները: Անոնց մէջ յանուանէ կը յիշուին, Մխիթար Տաթեւացի, Յովհաննէս Հերմոնեցի, Գալուստ Վաղանդենեցի, Սիմէոն Սիւնեցի, Յակոբ Բոստացի, Գրիգոր Այրարատեցի, Գրիգոր Ջուղայեցի, Մատթէոս Ջուղայեցի, Առաքել Սասնապատեցի, Եղիա Ոծոփեցի, Յովհաննէս Վաղանդենեցի, Յովնան Շամախեցի, Յովհաննէս Կապանցի մականուանեալ Կարմիր, Մատթէոս Ուխտեցի, Մկրտիչ Փայտակարանցի և Ստեփանոս Թաւրիզեցի (ՄՆԾ. 50): Տաթեւացիին արդիւնաւորութեան մէջ երկու գլխաւոր կէտեր նկատողութեան արժանի են: Առաջինը, իր ուսումնական ծրագիրն է, որուն առաջին մասը կը կազմէին անշուշտ Հնոց և Նորոց Կտակարանաց մեկնութիւնները, և նախնի սուրբ հայրերուն գրուածները, որոնցմով ուղիղ հաւատքը և ուղղափառ դաւանութիւնը կը հաստատէր: Անոնց հետ կ'աւանդէր նաեւ Լուծմունս արտաքին գրոց (ՄՆԾ.34), այսինքն է արտաքին իմաստասիրաց (ՄՆԾ. 51), կամ յոյն փիլիսոփաներուն՝ Պղատոնի և Արիստոտելի, Փիլոնի և Պորփիւրի իմաստասիրական գործերուն բացատրութիւնները, նպատակ ունենալով միտքը կրթելու ուղիղ տրամաբանութեան, և սուրբ գիրքէ անկախաբար ապացուցուած ճշմարտութեանց մէջ: Տաթեւացիին գիտական երկասիրութեանց գլխաւորն եղող Գիրք Հարցմանց գործը, իր ձեւովը յայտնապէս կը ցուցնէ թէ, Տաթեւացին հմուտ էր լատին լեզուի և տեղեակ էր լատին աստուածաբաններուն Սկոլաստիկեան ոճին, և Հայոց եկեղեցւոյ ուղղափառութիւնը կը պաշտպանէր միեւնոյն ձեւերով, որով անոնք սովոր էին իրենց վարդապետութիւնը պաշտպանել, և Հայ եկեղեցւոյ դէմ գրել: Երկու հատոր Ամառան և Ձմեռան քարոզգիրքներն ալ կը վկայեն, թէ յատուկ մտադրութիւն դարձուցած էր իր աշակերտութիւնը քարոզի և ժողովրդական խօսքին զարգացման համար բեմբասացութեան վարժեցնելու: Արիստակէս վարդապետի և Գէորգ Լամբրոնացիի, գրչութեան արուեստին վրայ գրուածներով զբաղած ըլլալն ալ (ՄՆԾ. 52), նշան է թէ ընտիր գրչագրութեան և ստոյգ ընդօրինակութեան զարկ տրուած էր Տաթեւի դպրանոցին մէջ, որով Տաթեւացին, ժամանակին համեմատութեամբ, լիագոյն ծրագիր մը կը մշակէր իր աշակերտներուն զարգացման համար: Երկրորդ նկատելիքնիս է, որ Մեծոփեցին Տաթեւացիին աշակերտները և վարդապետները յիշելէն ետքը կ'աւելցնէ, և քահանայս բազում առնել քան շինուածն օգէ (ՄՆԾ.51): Այդ բազմաթիւ քահանաներն անշուշտ ամուսնացեալ կղերին կը պատկանէին, և փաստ կ'ընձեռեն մեզի հետեւցնելու, թէ եկեղեցական բարձր ուսումը կուսակրօն դասակարգին պահուած առանձնայատուկ իրաւունք մը չէր, այլ թէ կուսակրօն և ամուսնաւոր դասակարգերու հաւասարապէս կը տրուէր եկեղեցական պաշտօնէութենէ պա-*

հանճուած կրթութիւնը, և թէ առեղծուածային վէճերին հետ հարկաւ կապուած չէր նկատուեր վարդապետական գաւազանը։ Տաթևացին 1390'էն սկսելով Տաթևի մէջ աշխատեցաւ անընդհատ, ուր եկեալ անդ (ՄԵԾ·34) մինչև 1409, ինչպէս պէտք է հաշուենք հիմնուելով Հայոց 858 թուականին համեմատ (ՄԵԾ·52), և ըստ այնմ ուղղելով չփոթմամբ 867 (ՄԵԾ·34) կամ 868 (ՄԵԾ·53) գրուած տեղերը։ Թէպէտև այդ միջոցին Լէնկթիմուրեան արշաւանքները մեծ տագնապներ հասուցին Հայաստանին, այլ համեմատաբար ազատ մնաց Սիւնեաց երկիրը, և Տաթևացին կրցաւ իւր գործը շարունակել։

**1380**. Սարգիս Ապրակունեցին ալ նմանօրինակ կերպով կ'աշխատէր Սուխարու վանքին մէջ (§ 1368), և իրեն աշակերտներն էին այն վարդապետները, որ Տաթևացիին Մեծոփ գալուն առթիւ այնտեղ խմբուեցան, Գրիգոր Խլաթեցի, Յակոբ Ովսաննայի, Մարգարէ Վարագցի, Յակոբ Ասպիսնակցի, Յովհաննէս Փափլինցի, Ստեփանոս Բերկրեցի, Մկրտիչ Հիզանցի, Յովհաննէս Բաղիշեցի Սարգիս Յարութիւնցի, և Մելքիսեդ Երզնկացի (ՄԵԾ·52), ինչպէս նաև Արճէշէ Տաթև գացող երկոտասան եղբարք, յայտնապէս կոչուած աշակերտք մեծին Սարգսի, որք են, Յակոբ, Մարգարէ, Յովհաննէս, Մկրտիչ, Կարապետ, Մելքիսեդ, Սարգիս, Մատթէոս, Կարապետ, և Թովմաս Մեծոփեցի պատմիչը, որ մնացած երկուքին անունը չտար (ՄԵԾ·51)։ Ասոնցմէ Սարգիս՝ Սալնապատացի կը յիշուի, և Մկրտիչը Նահապետեանց, և Յովհաննէսը՝ Փափկչէնցի, և երկու Մկրտիչներ ևս կ'աւելցուին՝ մէկը Հողձեցի և միւսը Օղուլբէկեան (ՏԱՇ·418), որոնք պէտք է ըլլան 12 թիւը լրացնողները։ Սարգսի աշխատութիւնն ու արդիւնաւորութիւնն ալ համանման էր Գրիգորի տուածին, սակայն Սուխարու աշակերտներուն դիմումը, որ բան մը աւելի վաստկելու նպատակով Տաթև գացին, այն տեղ աւելի բարձր ուսում տրուելուն նշանակն է։ Սարգիս երիցագոյն էր Գրիգորէ, և Որոտնեցիի գրեթէ ընկերակից (§ 1352), ուսատի կանխեց անոր մահը, և 1401'ին վախճանեցաւ մեծ վարդապետն Սարգիս ախորժելի և լի աւուրբք (ՄԵԾ·49), և թաղուեցաւ Արճէշի եպիսկոպոսներուն Խաչատուրի և Զաքէոսի գերեզմաններուն քովը (ՄԵԾ·37)։

ԱՊՐԱԿՈՒՆԵՑԻԻ ՄԱՀԸ

**1381**. Սուխարու առաջնորդութեան և ուսուցչութեան մէջ, Ապրակունեցիին յաջորդեց, սքանչելի այրն Աստուծոյ, մեծ հռետորն և վարդապետն Հայոց, Վարդան Հոգոցեցին (ՄԵԾ· 49)։ Ասոր ձեռքին տակ կը գտնուէին բազում աշակերտք առաւել քան զհազարն կրօնաւոր։ Նա Սուխարու Սուրբ Աստուածածին վանքին մէջ վարդապետեց զամս չորս, և առաւել հրով և սովորութեամբ պայծառացոյց զհոգեոր մանկունս Արճէշի գաւառին մէջ (ՄԵԾ·50), մինչև որ ստիպուեցաւ անկէ քաշուիլ հալածեալ յանօրինաց, այսինքն է 1405 տարւոյ Լէնկթիմուրի արշաւանքներուն պատճառով, և գնաց հաստատուիլ Վանայ քաղաքին մօտերը ի սուրբ Սանահատ, որ է Արծրունեաց օրերուն Զորովանքը, ուր քիչ ետքը 1406'ին (ՄԵԾ·41), եհան զոգի հեզաբարոյն Վարդան, և այն տեղ թաղուեցաւ։ Վարդանի մահուընէ ետքն է, որ Սուխարու աշակերտութենէն 12 վարդապետներ, որք կոչեցան գնացին Տաթև, վասնզի այն տեղ կը վարդապետէր Մեծն Գրիգոր, վարդապետն Ամենայն Հայոց, երկրորդ Լուսաւորիչն, և աստուածաբանն ջերմեռանդ ջահն ամենայն իմաստասիրաց և վարդապետաց հնոց և նորոց (ՄԵԾ·50)։ Այնտեղ երկու տարի մինչև 1408, շարունակեցին ուսանիլ 12 Քաջբերունիները, զորս յոյժ սիրով ընկալաւ Տաթևացին, կերպով մը հայրենակիցներ նկատելով և իւր ծագումը վերյուշելով, զի իւր հայրն ալ էր ի գաւառէն Քաջբերունեաց ի տեղւոյն Արճիշոյ (ՄԵԾ.50)։

ՎԱՐԴԱՆ ՀՈԳՈՑԵՑԻ

**1382**. Տաթևէն և Սուխարէն ետքը նշանաւոր եղաւ Մեծոփայ վանքը, որուն ծաղկեցնողն էր Յովհաննէս Մեծոփեցի։ Տաթևացիին քովէն բաժնուած ինչպէս կ'երևի, անոր Ապրակունիքէ Տաթև փոխադրուած միջոցին (§ 1369)։ Յովհաննէս ուխտ ըրած էր, որ եթէ իրեն տայ Աստուած իշխանութեան կարգ վարդապետութեան, որ է մեծ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԵԾՈՓԵՑԻ

*վարդապետութեան աստիճան, Աստուածած-նի Կուսին տաճար շինէ յոյժ հռչակ* (ՄՆԾ. 55), *և այս միտքով Մեծոփ հաստատուե-լէն երկու տարի ետքը ուզեց շինութեան ձեռնարկել, այլ չկրցաւ զի ոչ գոյր իմաս-տուն ճարտարապետ ի գաւառս իւր, ուստի պարտաւորուեցաւ համբերել ժամանակ մի, թէպէտ միւս կողմէն զարդարեաց զսուրբ ուխտն ժամօք և աղօթիւք և պատարագօք, ըն-թերցմամբ գրոց և աստուածախօսօք և գեղեցիկ կարգաւորութեամբ, ձայնօք և տնկօք* (ՄՆԾ. 57)։ *Վերջապէս յաջողեցաւ գտնել Հոռոմ մը Ցարաճ անուն, յոյժ իմաստուն և ճարտար շի-նող, որ այն կողմերը իջած էր ի գերութե-նէ Թամուրին, և անոր գլխաւորութեամբ հիմնարկութիւնը կատարեց* 1402'*ին, բայց շէնքը աւարտեցաւ յեօթն ամին, այսինքն է* 1409'*ին* (ՄՆԾ. 58)։ *Յովհաննէս Մեծոփեցի տաճարին արձանագրութեան մէջ, Ցարաճ յոյնին հետ յանուանէ կը յիշէ բազմաթիւ հայ ոսկիչ արհեստաւորներ ալ, որք են, Առաք, Սիրուն, Դաւիթ, Տիրատուր, Մկըր-տիչ, Յովհաննէս, Յովսէփ, Ղազար, Մար-տիրոս, Կիրակոս, Զաքար Բէկ, և միւս Առաք* (ՓԻՐ. 30), *և մենք ալ առջեւ կը բե-րենք Հայ արհեստաւորներու անունները անկորուստ պահելու համար։ Մեծոփայ տա-ճարին փառաւոր շինուածը գրգռած էր այլ ազգիները, և քաղաքն յանհնարին մոխրա-ցեալ մնէին, և մինչեւ իսկ փորձեցին քակել, այլ Յովհաննէսի պաշտպան կեցաւ Զողո-բոյն* (ՄՆԾ. 58), *որ է Թաթար կուսակալ Շէյխ Ահմէտը, որ տիրեաց ամ ծովաբոլորս, այսինքն Վանայ լիճին շրջակայ երկիրները կառավարեց, և յոյժ բարեբարոյ և քրիստոնէա-սէր գոլով, շէնցուց ու ծաղկեցուց աշխարհ-քը,* 1397'*էն մինչեւ* 1407 (ՄՆԾ. 49)։

**1383**. *Վերոյիշեալ Շէյխ Ահմէտին հո-վանաւորութեան ներքեւ ծաղկեցաւ նաեւ Սարի Ս. Գէորգ վանքը, Սարգիս Սորբեցի վարդա-պետին ձեռքով* (ՄՆԾ. 49), *զոր անգամ մը յի-շեցինք* (§ 1376)։

ԽԼԱԹԵՑԻՆ ԵՒ ՈՒՐԻՇՆԵՐ

*Պէտի չկարենանք մանրա-մասնութիւններ տալ Յակոբ Սաղմոսա-վանքցի և Գէորգ Երզնկացի վարդապետնե-րուն գործունէութեան վրայ, քանի որ կա-նոնաւոր տեղեկութիւններ կը պակսին։ Իսկ Գրիգոր Խլաթեցի վարդապետը, որ Ծերենց մականուանեալ է, զի էր որդի հոգեւորական Աստուածոյ ծնէր* (ՄՆԾ. 41), *Վարդան Հոգոցեցիին յաջորդեց Սալնապատի մէջ, բայց ոչ կրցաւ հոն մնալ, և ոչ ալ Սուխա-րու վանքը դառնալ, և քաշուեցաւ Բըզ-նունեաց գաւառը, Արծկէ քաղաքի մօտ, Ցիպնայի Ս. Ստեփաննոս վանքը, Սիփան լերան ստորոտը, այժմ ընկլուզած։ Խլաթե-ցին մեծ աշակերտութիւն չկրցաւ կազմել, դժուար ըլլալով ուսման հետեւիլ աղետա-լից միջոցին, թէպէտ Մեծոփեցին այդ կը վերագրէ աստանօրեալ բարեաց աստուածախօսաց մերոյ աղէ։ Ուստի ինքզինքը տուաւ գիր-քերու ընդօրինակութեան, և յետոյն ամ գիր-գրեաց ոսկի և գեղեցիկ* (ՄՆԾ. 42), *և արդիւնքը աղքատներուն կը բաշխէր* (ՄՆԾ. 85)։ *Խլա-թեցիին գլխաւոր գործն է Յայսմաւուրքը նորէն կարգադրելն ու ճոխացնելը, Վկայա-սէր անունին ալ արժանանալով* (ՀԱՅ. 560), *և ինքն ալ նոր վկայ մը ըլլալով իւր ծե-րացեալ հասակին մէջ։*

**1384**. *Լէնկթիմուրի արշաւանքներուն մանրամասնութիւնները զանց ընելով, յի-շենք միայն թէ* 1387 *ձմեռուան սկիզբը իւր եր-կիրը դառնալէն ետքը* (§ 1365), *զէնքերը դար-ձուց հեռաւոր կողմեր, արշաւեց Կովկաս-ներու հիւսիսակողմը գտնուող երկիրները, Ռուսաստանն ու Խրիմը ասպատակեց, անկէ դարձաւ հարաւ, Աստրպատականէ և Պարս-կաստանէ անցաւ Հնդկաստան, յարձակեցաւ ներքսագոյն Թաթարաստանի և Չինաստանի վրայ ալ, ոչ կանոնաւոր աշխարհակալու-թեամբ, այլ հինաբար ասպատակելով, աւե-րելով և աւարելով, գերելով և գերփելով անխնայ։*

ԹԱԹԱՐՆԵՐ ԵՒ ԹԻՒՐՔՄԷՆՆԵՐ

*Լէնկթիմուրի Հայաստանի կողմեր արշաւանքները նորոգուեցան* 1395'*ին* (ՄՆԾ. 44), *Միջագետքի կողմէն մտնելով, և հետզհետէ զարնելով Ամիդը, Մերդինը, և Արեւորդիներուն չորս գիւղերը, հասաւ Եր-զընկա, ուր եկեղեցիներուն կործանումը ար-գիլելու խնդրանքով իրեն ներկայացաւ Գէորգ Երզնկացին, բայց յահէ և երկիւղէ զզօրսն՝ ըմբռնեալ պատառեցան և արեան իջանէր, և չկրնալով յաջողիլ լալով և աղաղակաւ յետս դարձաւ առ Աստուած* (ՄՆԾ. 45)։ *Լէնկթի-*

մուր Երզնկայէ սկսաւ դէպ ի Կարս երթալ, Բասէնի Անիկ բերդը գրաւելուն առթիւ Մսիր բերդակալը և հարիւր բերդապահներ կոտորեաց, և բերդէն ի վայր ընկէց, և գնաց։ Արարատեան նահանգի մէջ Բագրատունեաց բերդը, այսինքն Կարսը, առած ատեն երկքահարիւրական տաճիկներ և քրիստոնեաներ զատեց, ըսելով թէ զքրիստոնեայս սպանանէին և զտաճկին ազատէին։ Ասոր վրայ, Կարսի Մկրտիչ եպիսկոպոսին երկու եղբայրները երթեալ խառնեցան ի գունդս Տաճկացն, սակայն սպաննելու հրամանը տաճիկներուն վրայ եկաւ, և երկուքն ալ միասին սպանուեցան, թէպէտ կը պոռային թէ ես Քրիստոսի ծառայ եմ, և սուգ մեծ եղև եպիսկոպոսին (ՄԵԾ. 46)։ Թաթարաց ասպատակները շարունակեցին մինչև Կոգովիտ և Արճէշ, և այդ միջոցին տեղի ունեցաւ Ստեփանոս Դարացի վարդապետին մահը (ՄԵԾ. 47)։ Զանազան պատերազմներ շարունակեցին Թաթարներու զօրավար Աղդինի, և Թուրքմէններու ամիրայ Յուսուփի կամ Գարա-Եուսուֆի մէջտեղ։ Յուսուփ յաջողութիւն մըն ալ ունեցաւ՝ Յովհաննէս անուն Հայու մը հասուցած լուրովը, զոր հարազատ մեր կ'անուանէ Մեծոփեցին (ՄԵԾ. 48), բայց Թաթարներ նորէն զօրացան, և Յուսուփ պարտաւորուեցաւ փախչիլ Ասորիքի կողմերը, և 1396'էն մինչև 1406 այլ ոչ կարաց գալ Հայաստանի կողմերը (ՄԵԾ. 49), և ասկէ կը սկսի Շէյխ Ահմէտի չինարար կառավարութիւնը, ինչպէս արդէն յիշեցինք (§ 1382)։ Ինչ որ այս արշաւանքներու մէջ մեր դիտել տալ ուզած կէտն է, Հայաստան աշխարհին աւերումն է, զոր տխուր սրտով կը պատմէ Մեծոփեցին, թէ եկեալ փեսայ զաշխարհս մեր աւերեաց, Բոլոր և քաղաքս յամենայն ընկէց (ՄԵԾ. 47)։

**1385.** Լէնկթիմուր իւր արշաւանքները նորոգեց 1400'ին վերջերը (ՄԵԾ. 131), և Միջագետքի վրայէն հասաւ Դամասկոս, և յետոյ ի ձմեռն եկաց այնտեղ, և 1401'ին սկիզբը, չարժեցաւ դէպի Փոքր Ասիա (ՄԵԾ. 62)։

**ԼԷՆԿԹԻՄՈՒՐ ԿԸ ՅԱՌԱՋԷ**

Դամասկոս եղած ատենին համար կը պատմուի, թէ 700,000 զինուորներու ձեռքով 700,000 գլուխ կտրել տալով եօթը բուրգեր շինել տուած ըլլայ, և յատկապէս Տաճիկներու գլուխներով, և հրամայելով չմօտենալ ամէն անոնց որ ըսին թէ Յիսուէ եմ, այսինքն է Իսէվի, որ է Քրիստոնեայ (ՄԵԾ. 63)։ Նոյն հրամանը Պաղտատի մէջ ալ ընել տուած ըլլալը կը պատմուի, և Մեծոփեցին կը յիշէ, թէ իւր հօրեղբօր եղբայրն Միհրշահ է քաղաքէն Վանայ, ականատես եղած և իրեն պատմած է (ՄԵԾ. 64), սակայն ուրիշներ իբրև անհիմն զրոյց կը նկատեն այդ պատմութիւնը, և գոնէ չափազանցեալ պէտք է նկատել գլուխներուն թիւը։ Լէնկթիմուր 1401 տարին անցուց Ասորիքի և Եփրատացւոց կողմերը, և այդ միջոցին կրնանք դնել Սիսի վրայ ալ յարձակիլը, և աւերելով ու աւարելով անցնիլ երթալը (ՍԻՍ. 542)։ Յառաջեց նաև Պաղեստինի կողմը, բայց Երուսաղէմին չդպաւ և ի մեծ օրն, այսինքն 1402'ին պաշարեց Սեբաստիան, որ Օսմանեանց ձեռքն էր անցած։ Լէնկթիմուր քաղաքը անձնատուր ըլլալու հրաւիրեց երդուըննալով, թէ ով զմեզ որով սպանանէ, սուր նոյն ի սէրս նորա մտանէ, բայց ամէնէն խուժդուժ անգթութիւնները այնտեղ կատարեց։ Հրամայեց որ զծերագոյնն կոտորեսցեն, իսկ զկանայսն յափշտակեսցեն կոխել և արշաւել։ Զորդիս և զդստերս ժողովեալ ի դաշտավայրէ՝ հեծելազօրի ոտքերուն ներքեւ կոխկռտել տալ հեծեալ զօրայն համարայնց, իսկ քաղաքացիները ու զինուորները կոխել ափէսէ և յետոյ զօրէն հազար ոգի, և կենդանի թաղել և ջրով և մոխրով ծածկել (ՄԵԾ. 65)։ Սեբաստիա տակաւին կը պահէ այդ անողորմ բռնութեան յիշատակը Սև-Հողեր դաշտին անունովը։ Լէնկթիմուր սաստիկ զայրացած Օսմանեան սուլտան Պայազիտի խրոխտ վարմունքէն, չիտակ անոր վրայ քալեց, Անկիւրիոյ ճակատամարտին մէջ յաղթութիւնը տարաւ 1402 յունիս 18'ին, և Պայազիտը գերի բռնելով, մէկտեղ առաւ Սմրզանտ տանելու, այլ չհասաւ, զի Պայազիտ ութ ամիսէն 1403 մարտ 8'ին մեռաւ Լէնկթիմուրի բանակին մէջ (ՏԻԻ. 355)։

**1386.** Օսմանեան սուլտանութեան վրայ առիթ չունեցանք խօսելու, անոր սկզբնաւորութիւնը պատմելնէս ետքը (§ 1228)։ Օսման Ա. սուլտան և հարստութեան հիմնադիրը, որ իր անունն ալ տուաւ իւր ժո-

ղովուրդին, սահմանները ընդարձակեց Յունաց կայսրութենէ ասիական գաւառներ գրաւելով, և մինչև Նիկիա. Նիկոմիդիա և Պրուսա մօտենալով: Իրեն յաջորդեց որդին Օրխան Ա 1326'ին, որ յիշեալ քաղաքներուն տիրեց, Պրուսան մայրաքաղաք հռչակեց, Քիոս կղզին, Կիւզիկոն Թերակղզին, և Գալլիպոլիս նաւահանգիստը գրաւեց, Կոստանդնուպոլսոյ սպառնացաւ, բայց աւելի նշանաւոր եղաւ ներքին կարգ ու կանոն, օրէնք ու զինուորականութիւն հաստատելովը իւր եղբօր Ալայէտտինի կարող ձեռնտուութեամբ: Մուրատ Ա 1360'ին իւր հօրը յաջորդելով, տիրապետութիւնը Եւրոպական կողմերը ընդարձակեց, Ադրիանապոլիսը մայրաքաղաք հռչակեց, Թրակիան, Մակեդոնիան և Ալբանիան նուաճեց, Քոսովայի պատերազմին մէջ Բուլղարներու ու Սերբերու ու Հունգարացիներու միացեալ զօրութեանց յաղթեց 1389'ին, բայց նոյն դաշտին մէջ Սերբիացի վիրաւոր զինուորի մը կողմէ սպանուեցաւ: Ասոր որդին էր Պայազիտ Ա, որ մերթ Ասիակողմը և մերթ Եւրոպակողմը արագաշարժ արշաւանքներովը Ըլտըրըմ կամ Կայծակ մականունը առացաւ: Ասիոյ կողմէ զանազան փոքր իշխանութիւններ նուաճեց, Եւրոպիոյ մէջ իւր հօրը աշխարհակալութիւնները ընդարձակեց, Կոստանդնուպոլիսը պաշարեց և Յունաց Մանուէլ Բ Պալէոլոգ կայսրը հարկ վճարելու ստիպեց, Դանուբեան Նիկոպոլսոյ պատերազմին մէջ՝ Հունգարացւոց և Լեհաց և Գաղղիացւոց միացեալ խաչակրութիւնը ցրուեց 1396'ին, բայց Լէնկթիմուրի դէմ չկրցաւ դնել, և գերի ինկաւ, բայց երկաթէ վանդակի մէջ փակուած ըլլալու զրոյցը հաստատութիւն գտած չէ: Յիշեալ սուլտաններուն Հայոց հետ յարաբերութիւնները միշտ քաղցր ու բարեացակամ եղան: Օսմանեանք, լոկ զէնքի նուիրուած ժողովուրդ մըն էին, բայց դէպի քաղաքակիրթ երկիրներ տարածուելով, արուեստից ու ճարտարութեանց պէտքը զգացին, և Յոյներուն չկրնալով վստահիլ, Հայ տարրին վրայ հաստատեցին իրենց մտադրութիւնը, և անոնցմէ օգտուելու համար, ամէն տեսակ դիւրութիւններ ցուցուցին: Փոխադարձաբար Հայերն ալ, որ ուրիշ տեղեր հալածուած ու նեղուած էին, խուռն սկսան դիմել Օսմանեանց տիրապետած երկիրները, և այս միջոցին սկսած է Փոքր-Ասիոյ առաջակողմն, և յանկոյս Վոսփորի գաւառներուն նորանոր գաղթականութիւններով հայաբնակ և հայաշատ երկիրներ դառնալը: Օսմանեանք կրօնական ազատութիւնն ալ լիապէս կը յարգէին, մինչ որ Հայերը կը քաջալերէր; մինչ Յունական կայսրութիւնը կրօնական բռնադատութիւններովը ստիպած էր Հայերը իրմէ հեռանալ, և Հայաստանի գաղթականներն ալ կը նախընտրէին Կովկասը անցնելով դէպի Ղրիմ և Լեհաստան, կամ Եփրատը անցնելով դէպ Ասորիք տարածուիլ, իսկ Կիլիկիոյ գաղթականները ծովը անցնելով դէպ Իտալիա կը տարածուէին: Բայց Օսմանեան սուլտանութեան զօրանալէն ետքը՝ գաղթականութեանց հոսանքին ընթացքը փոխուեցաւ, և արեւմտեան Ասիան եղաւ իրենց նախընտրած կողմը:

**1387**. Լէնկթիմուրի դէպ Արեւելք մեկնելէն ետքը, Փոքր-Ասիոյ մէջ մնացած էր Ռամազան անուն Թաթար իշխանը այն կողմերուն տիրապետելու հետամուտ, որով Սիս ալ մտահոգ էր վան Հօլտեան Ռոմզաննէն (ՍԻՍ. 542): Այդ պարագային մեղի մտածել կու տայ, թէ անուանեալ Թագաւոր Կոստանդինը (§ 1349), հետզհետէ կրցած էր իւր դիրքը զօրացնել, և եթէ ոչ ինքնագլուխ, գոնէ Եգիպտացւոց հովանաւորութեամբ իշխանութիւն մը հաստատել Սիսի մէջ, զոր Ռամազանեանք կ'ուզէին գրաւել, և յարձակումներով կը նեղէին Սսեցիները: Ասոնք յոյնարգելէս է Նեղըն-Բէնէ, և ակնյայտնի տեսնալով զզօրանոյն անհնարինէց, յուսակտուր եղան վերջնական յաղթութեան հասնելէն, և ինչ ընելիքնին որոշելու համար ձեռքով եղեռ է ... Կոնզալէս Քլաւիխոյէն, և համաձայնեցան քաղաքնին լքանել ու գաղթել: Այդ ժողովին թուական ցուցուած է 1404 (ՍԻՍ. 542) կամ 1403 տարին (ՍԻՍ. 560): Գաղթականութեան առաջին խումբը մեկնած է, Երեւշատ թօ մը, գլուխ ունենալով ... Կոնզալէս, Բան Կոնզանդին Բոկ..., իսկ

ՕՍՄԱՆԵԱՆՔ ԵՒ ՀԱՅԵՐ

ՍՍԵՑԻՈՑ ԳԱՂԹԵԼԸ

երկրորդ խումբը՝ Լուսինեանքն, և անոր առաջնորդներն են, զորոն Աւշինէն, և Երիցունքն Յովհաննէս և Վահան, Գրիգոր և Ստեփաննոս։ Քաղաքէն մեկնողները կը նշանակուէին թուով ԼՌ, (երեսուն հազար), եթէ սխալ չէ թուատառը, կամ թէ հազար երեսուն կարդացուելու չէ. որովհետեւ թէ ցուցուած թիւը չափազանց կ'երեւի, և թէ երկու օրուան մէջ այնչափ բազմութեան մեկնիլը դիւրին չէր։ Քաղաքին մէջ կը մնան միայն աղքատ և չքաւորք, որոնք տեսնելով, թէ ոչ ոք մնաց ի մեծատանց և իշխանաց, և զօրաց և ի քահանայից ցեղէն, կ'որոշեն անձնատուր ըլլալ, և եղան զՍիս յոնէսէ վէց (ՍԻՍ. 542)։ Արդ 1404 յունիս 6 օրը ուրբաթ կը հանդիպի, որով նախընթաց երեքշաբթիի և չորեքշաբթիի մեկնումները կ'ըլլան յունիս 3'ին և 4'ին։ Օսմանցիք այս կերպով Կիլիկիոյ կը տիրապետեն, և միջոց մըն ալ անոնց ձեռքը կը մնան Հայ թագաւորութեան վերջին բեկորները։ Սիսէ ելլող գաղթականները անցան յայնկոյս ծովու, որ աւելի Կիպրոս անցնելնին հաւանական կը ցուցնէ, ուր տակաւին քրիստոնեայ իշխան մը կար Յովհաննէս Բ թագաւորը, սակայն ուրիշ ժամանակագիր մը կ'ըսէ թէ փախեաւ էանց գնացին ի Փռանկաստան (ՍԻՍ. 542)։ Հետեւապէս անտեղի չէր ըլլար, այդ գաղթականութեան հետ կապել Իտալիոյ մէջ հաստատուած Հայազգի հասարակութեանց մի մասը։ Թագաւորի անուն կրող Կոստանդինին թողին մեկնելը, իսկ իր անունին վերջէն չյիշուիլը մոռծել կու տայ, թէ Կոստանդին Սիսէ քաշուելով Կիլիկիոյ մէջ կամ մօտերը մնացած է, ապագայ ակնկալութեանց յուսով. որով պէտք կ'ըլլայ դինքն իբր ձեռներէց և աննկուն հոգւոյ տէր մէկը ճանչնալ։ Իսկ իրեն համար գրուած կը գտնենք, թէ վերջին Լեւոնէ ետքը տիրեալ թագաւորէ ի Սիս Կոստանդին, և միանգամայն տասն և ութն ամ թագաւորեաց կ'ըսուի, և 1424'ին կը դրուի իր թագաւորութեան վերջը (ՍԻՍ. 543)։ Ասկէ աներկբայ կը հետեւի, որ եթէ ոչ տիրապէս թագաւոր, գոնէ տիրող ազգապետ մը եղած նա, և վերջալոյսի ճառագայթներու նման չարունակեց ազգային իշխանութեան օրը, 1376'էն մինչեւ 1424, որ ճշդիւ կը պատասխանէ իր 48, ամեայ իշխանութեան։

**1388.** Գալով Կարապետ կաթողիկոսին, իրեն տրուած 12 տարիները (ՍԱՄ. 172), 1392'էն հաշուելով (§ 1374), կու գան վերջանալ 1404'ին որ է ճիշդ Սիսին Օսմանցւոց ձեռք իյնալուն տարին, և երկու պարագաներ յարմար զուգադիպութեամբ կու գան իրարու յարակցիլ, այնպէս որ նոր տիրապետութիւնը յօժար կամ թէ բռնի ձեւով վերջ տուած կ'ըլլայ Կարապետի կաթողիկոսութեան։ Կարապետի 1404'ին կաթողիկոս յիշուիլը (ՓԻՐ. 23), պատմութեանս կարգին կը համաձայնի, բայց 1411'ին ալ է հայրապետութեան Հայոց տէր Կարապետ գրուիլը (ՓԻՐ. 39), ծանր դժուարութեանց տեղի կու տայ, քանի որ ստոյգ է թէ 1408'ին Յակոբ Գ արդէն կաթողիկոսացած էր։ Դիւրին մեկնութիւններ են գրչագիրի ընթերցուածը սխալուած կարծել, կամ հեռաւոր Սիւնիքի մէջ գրող Ծարեցի ընդօրինակողը Կիլիկիոյ գործերուն անտեղեակ ենթադրել, այլ ասոնք ոյժ ունին, երբոր հակառակը յայտնի փաստերով ու վկայութիւններով զօրացած կ'ըլլայ։ Դավրիժեցին 1404'ին ձեռն տէր Կարապետ մը դնելով (ԴԱՎ. 336), զոր մենք հերքեցինք (§ 1375) բոլորովին իսկ չյիշեր Կարապետի յաջորդ Յակոբին անունը, զոր շարունակողը կ'ընդունի, բայց միայն ամս երկուս պաշտօնավարութիւն կու տայ, այն ալ 1403 թուականէն սկսելով (ՍԱՄ. 172), որ է մերձաւորապէս Օսմանցւոց տիրապետութեան տարին, և որ 1408'ին ոչ եւս Յակոբը, այլ Գրիգորը կաթողիկոս ընդունած կ'ըլլայ, որուն սկիզբը կը դնէ 1405'ին (ՍԱՄ. 172)։ Այս իրարու հակասող տեղեկութեանց խառնելով Մեծոփեցիին ընդհանուր կերպով գրածն ալ, թէ Կիլիկեցիք վերջին վեց կաթողիկոսներէն վեցին ալ տեղ մահուան արձանագրեն (ԿՈՍ. 55), և Ջամչեանի հարկաւ աղբիւրէ մը քաղածն ալ՝ թէ Յակոբ հաստատեալ յայլազգէ ամիրային Կիլիկիոյ ի Լուսաւորչեան աթոռոյն (ՉԱՄ. Գ. 455), կը կարծենք իրաւունք ունենալ, եթէ ամէնէն ալ անկախաբար, բայց և ամենուն ալ տարրներէն

ԿԱՐԱՊԵՏԻ ՄԱՀԸ

*բաղադրուած կարծիք մը յայտնենք Կարա– պետի կաթողիկոսութեան վերջանալուն վրայ, որուն արդէն ինքնութեան վրայ ալ նոր կարծիք մը յայտնելու առիթը ունե– ցանք* (§ 1375)։ *Մեր տեսութեամբ Ռամա– զանեանց* 1404'*ին Սիսին տիրելը, և Կարա– պետի այդ տիրապետութեան դէմ աշխա– տած ըլլալը, պատճառ եղած են Նոր տիրապետ Ռամազան ամիրային Կարապետին դէմ թշնամանալուն։ Իսկ Յակոբ ամիրային հաճութիւնն ու պաշտպանութիւնը ստանա– լով, աթոռին հետամուտ կ'ըլլայ, և նպա– տակին կը հասնի, ոչ ընտրութեամբ, զի պարզապէս* [illegible], *որ է ըսել զօրութեամբ զայն ձեռք ձգեց, հա– կառակ* [illegible] *իրեն դէմ ըլլա– լուն* (ՉԱՄ. Գ. 455), *որոնք հարկաւ Կարա– պետի կուսակիցներն են եղած։ Այս կեր– պով Սսոյ մէջ հակաթոռութեան դիրք մըն ալ կազմուած պիտի ըլլար, բայց անոր ա– ռիթ տրուած չէ Կարապետի դեղակուր սպանութեամբը։ Ձենք կարծեր, որ Կարա– պետ պաշտօնէ իյնալով մինչեւ* 1411 *ապ– րած ըլլայ, զի* 1409'*ին Տաթեւացին ուղ– ղակի Յակոբի կը դիմէր, ինչպէս պիտի տեսնենք, այլ սպանութիւնը գահազրկու– թեան կից քալած է։ Ըստ այսմ* 1392'*ին կաթողիկոսացած Կարապետը,* 12 *տարի ետքը,* 1404'*ին վերջերը թունաւորուած կը մեռնի և Յակոբ նոյն թուականին կաթողի– կոսութեան տիրացած կ'ըլլայ, ոչ օրինա– ւոր կերպով, այլ նոր տիրապետող ամի– րային անհարկու ազդեցութեամբ, ուսկից անբաժան պէտք է նկատել Յակոբէ տրուած համոզիչ ընծաները ու վճարումները։ Կարապետ անկանոն կերպով աթոռ բարձ– րացած, ապարդիւն կերպով պաշտօնի վրայ մնացած, անփառունակ կերպով ալ զայն կնքած կ'ըլլայ, չկրնալով ինքն ալ յագե– ցուցիչ գոհունակութիւն մը ստանալ իւր կաթողիկոսութենէն։*

**1389**. *Սրբոց եկեղեցւոյ պետերը և բարձր պաշտօնեաները չինին օրինակներ և առաքինի տիպարներ չեն ներկայեր մեր առջեւ, մխիթարական է տեսնել որ հասա– րակ ժողովուրդէ անձեր կ'արիանան իրենց հաւատքին պաշտպանութեան և, կեանքեր– նին զոհելու անձնուիրութիւնը կ'ունենան։*

**ԹԱՄԱՐ ՄՈԿԱՑԻ**

*Մոկացի կին մը, անունը Թամար, և պայծառ գեղեցկութեան համար Գոհար կոչուած, Թով– մաս անուն անձի մը հետ ամուսնացած էր, բայց Քուրդ մը եաւէն կ'իյ– նար յափշտակելու, ուստի նոր ամուսինները միասին կ'երթան կը փակուին Աղթամար կղզիի մէջ։ Այս դէպ– քը տեղի կ'ունենայ* 1393'*ին առեններ։ Քանի մը տարի ետքը, գործով մը Ոս– տան քաղաքը կ'իջնան, նոյն քուրդը կը հանդիպի Թամարին, և մէկէն սովորական խաբէութեան կը դիմէ, թէ* [illegible] *էր։ Աղդին ամիրայ խաբէական ըլ– լալը զգալով* [illegible] (ՆՈՐ. 189), *սակայն իւր կինը Փաչախաթուն,* [illegible] *Թիւրքմէնուհի կամ քրդուհի մը* (ՆՈՐ. 190), *այն որ Եղիսաբէթ Խառաբաս– տեցին ալ նահատակել տուած էր* (§ 1371), *մէջ տեղ կ'անցնի Թամարը յորդորելու ու բռնադատելու։ Թամար դատաւորին առ– ջեւն ալ կը հանուի, բայց անսասան կը մնայ արիասիրտ պատասխաններով. և նոյն– պէս կը խօսի տասն օր անդուլ բանտար– կութենէ ետքը, հազար ոսկի ալ առջեւը դրուած տեսնելով։ Երբ այդ ջանքերը ար– դիւնք չունեցան, մահուան վճիռ տրուեցաւ, և Թամար քարկոծմամբ նահատակուեցաւ Ոստանի մէջ, իսկ Աղդին հրամայեց մարմինը պատուով թաղել։ Թուական նշանակուած է* 1398'*ին ահեկի* 17'*ին, երկուշաբթի օր, Յինանց միջոցը, մերձ տօնի սրբոյն Գէոր– գայ* (ՆՈՐ. 194)։ *Հայկական ամիսը հնար չէ հին տոմարով հաշուել, զի այն ատեն կը պատասխանէր օգոստոս* 25'*ին որ Յի– նանց միջոց չէ։ Իսկ նոր սարկաւագադիր տոմարով կը պատասխանէ ապրիլ* 24'*ին, որ Յինանց միջոց է, և մերձ է սուրբ Գէոր– գայ յիշատակին, որ Յայսմաւուրքի մէջ ապրիլ* 23'*ին կը նշանակուի։ Միայն* 1398'*ին ապրիլ* 24 *երկուշաբթի չհանդիպիր, այլ չո– րեքշաբթի, իսկ երկուշաբթի կը հանդիպի* 1396, *և պէտք կ'ըլլայ հայկական ՊԽԵ թը– ւականին մէջ* (ՆՈՐ. 195) *Է և Ե թուատա– ռերու փոխանակութեամբ թուականը ուղ– ղել, և ՊԽԵ կարդալ, ու Թամար Մոկացիին նահատակութիւնը դնել* 1396 *ապրիլ* 24'*ին, որ կը լինի Յինանց չորրորդ կամ Կարմիր*

*կիրակիին երկուշաբթին։ Ուրիշներ Ե և Է Թուատառերու փոխանակութիւնը ամսաթիւին վրայ կատարելով ժԵ ամսաթիւը ժէ կ'ուզեն կարդալ, և քանի որ 1398 ապրիլ 22'ը երկուշաբթի կը հանդիպի, այն օր դնել նահատակութիւնը։ Այդպէս կ'ընեն քանիէ աւելի ձեռագիրներէն միայն երկուքին մէջ յետ աշխարհամատրան կիրակէի յաւելուածը տեսնելով* (ՆՈՐ· 197), *բայց մենք կը նախադասենք տարեթիւին վրայ կատարել Թուատառերու՝ ուղղութիւնը, զի միայն երկու օրինակներու յաւելուածը բնագրական չկրնար սեպուիլ, և միւս կողմէն կը յարգուի Յայսմաւուրքին հեղինակութիւնն ալ, որ ապրիլ 24'ին և ոչ 22'ին կը դնէ Թամարի յիշատակը* (ՅԱՍ· Ա· 182)։

**1390**. *Անգամ մը Վանայ քաղաքին մէջ, Հայտարի կոչուած չէխերը. տաճիկ*

ԵՐԿՈՒ ՎԱՆԵՑԻՔ

*աղջկան մը մարմինը գերեզմանէն հաներ էին վան ծեղոյ, հաւանաբար կախարդական նպատակով։ Գործը քրիստոնէից վրայ Թողուեցաւ, և քաղաքացիներէն ութը հոգի ամբաստանուեցան։ Սառնցմէ մէկը Սիրանոս անուն խոստովանեցաւ, բայց ուրացաւ և ազատեցաւ. և երկու մեղսակիցներ միայն ցուցուց, որով հինգ հոգիներ այլեւս չի փնտռուեցան։ Երկուքէն մէկը՝ Կարապետ փախաւ, իսկ միւսը Մելքիսեդ տանը մէջ ձերբակալուեցաւ, և անմիջապէս ուրացութեան հրաւիրուեցաւ։ Ցանձն չառնելուն, հրացեալ շամփուրներով մարմինը տանջեցին 26 տեղերէ, և հաւատքին վրայ հաստատուն մնալուն քարկոծման վճիռ տուին։ Կարծելով թէ պիտի չկարենայ քալել, կողովով կ'ուզէին փոխադրել, այլ նա բոլէ ճղէոյ, և քարկոծմամբ նահատակուեցաւ, իսկ մարմինը յօշոտելով այրեցին։ Մելքիսեդ Վանեցիի նահատակութեան օրն է 1403 յուլիս 10։ Օր մը ետքը ձեռք ձգեցին Կարապետ Վանեցին ալ, և ուրացութեան բռնադատելու համար ականջները կտրեցին, և չհաւանելուն պատճառով քարկոծեցին ու այրեցին ընկերին նման* (ՆՈՐ· 203)։

**1391**. *Յովհաննէս Ձմչկածագցի քահանայն ալ նոյն 1403 տարին կատարուեցաւ։ Իւր բարեբարոյ, պարկեշտ և աղքատասէր կեանքը քահանայակից ընկերներուն նախանձը գրգռած էր, որոնք զինքն սկսան զրկել*

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՁՄՉԿԱԾԱԳՑԻ

*ու հալածել։ Յովհաննէս յաջողեցաւ Մահմուտ ամիրայէն արտօնութիւն ստանալով, փայտաշէն նոր եկեղեցի մը կանգնել Կարմիր Սարակ կոչուած տեղը։ Ասիկայ աւելի եւս գրգռեց նախանձոտները, և Յովհաննէսի դէմ ծանր ամբաստանութիւններ մատուցին ամիրային՝ արբած մի պահուն, որ հրամայեց չինուածը քանդել և քահանայն ուրացութեան ստիպել։ Անմիջապէս ժողվուեցան, փայտաշէն եկեղեցիին կրակ տուին, և Յովհաննէսի ուրացութեան չհաւանելուն համար, կողէալ որէաւ և յէաւ արէէն է հօրն, և այսպէս կատարուեցաւ սրբակրօն քահանայն 1403 սեպտեմբեր 10'ին։ Ձմչկածագի եպիսկոպոսը Դաւիթ, արտօնութիւն ստանալով մարմինը պատուով թաղեց Ս. Աստուածածին եկեղեցին է Ներքս դորողէն, և յիշատակն ալ գիրի առաւ* (ՆՈՐ· 206)։ *Այդ միջոցներուն ընդհանուր հալածանք ալ հրաչակած էր Բաղէշի մէջ Իբրահիմ ամիրայն, որ իւր եղբօր Շարաֆի յաջորդած էր։ Նա կողոոփ ոքէ է քողոքէն, և յոյժ փառնացան քրիստոնէայք, բայց յատուկ նահատակուածներու անուններ չունինք։ Իբրահիմի ընթացքին հաւանութիւն չտուաւ Միրան-Շահ, Լէնկթիմուրի որդին, որ հարաւային գաւառներու կողմնակալ դրուած էր, և Իբրահիմին վրան քալեց ու սպաննել տուաւ, բայց Ազգին ամիրային միջնորդութեամբ, Իբրահիմի որդին Շամշատինը ամիրայ նշանակելով դարձաւ Թաւրիզ իւր կեդրոնը* (ՄԵՄ· 69)։

**1392**. *Տարօրինակ պարագաներով կը պատմէ Մեծոփեցին՝ Ստեփան Ամիւկցի քահանային նահատակութիւնը, ապօրէն գործեր ալ*

ՍՏԵՓԱՆ ԵՒ ՄԻԻՍԷՖԻՐ

*վերագրելով անոր։ Ստեփանոս միջոց մը իւր ծննդավայրին մօտ եղող Լիմ անապատը ապրելէ ետքը, Արճէշ եկաւ, և երկիրը աւոոլ և անաւոլնորք գտնելով, զի եպիսկոպոս և վարդապետ փախած էին Թաթարաց յարձակումներուն պատճառով, բոլոմ ժա-*

ժամանակս եղև առաջնորդ գաւառին։ Մեծոփեցին կը մեղադրէ Ստեփանոսի ըրածը, իբր զի պէտք է որ ամենայն կարգաւոր յիւրում կարգի կացցէ. սակայն մենք ապօրէն չենք գտներ, որ նա անտերունչ ժողովուրդին ինքնընտիր առաջնորդն եղած ըլլայ, միայն թէ ատոնցմէն բարձր խորհրդական գործերու չխառնուի։ Այլ կը գտնենք մանաւանդ միւս պարագան, որ նա կ'ապրէր յափշտակեալ էին մի ի գաւառացն հրամանաւ և կաշառօք անհաստատից (ՄԵԾ. 112)։ Այդ վիճակը շարունակեց բազում ժամանակս, և Արճիշեցի տանուտէրներէն Մուսէֆիր ալ գործակից էր Ստեփանոսի։ Ասոնց գործունէութիւնը հաճոյ չըլլար անօրինաց և ստախօս քրիստոնէից ոմանց, որ նենգելով մատնեն երկուքն ալ Արճէշի Սահանդ ամիրային (§ 1365)։ Ուրացութեան առաջարկը կը հետեւի, և յանձնառու չըլլալուն երկուքն ալ կը գլխատուին, և ընկեալս ի դուրսն ի վայր կախեցին։ Մեծոփեցին կը յաւելու թէ անմեղ արեամբն իւրեանց լուացին զթողութիւն մեղաց իւրեանց (ՄԵԾ. 112), հարկաւ ապօրէն կենակցութիւնը, և ոչ թէ անձնընծայ գործունէութիւնը։ Ստեփանոսի և Մուսէֆիրի նահատակութեան թուական ցուցուած է 1395 տարին, առանց ամսաթիւի (ՄԵԾ. 113)։ Այդ նահատակութիւնը պատմելէն ետքը երկարօրէն առաջ կը բերէ Մեծոփեցին նոյն քահանային սերունդին մէջ պատահած անկարգութիւնները, յայտարարելով թէ ոչ սերմանցն ոչ լինէ երկրագործութիւն, և ոչ [illegible] ոչ լինէ [illegible] (ՄԵԾ. 113)։ Սկսելով պատմել թէ ի քահանայէ յայսմանէ ծնաւ մանուկ մի Յովհաննէս անուն, վրայ կը բերէ մերձաւորաց ամուսնութիւններ, որոց մէջ իրաւ կան բաւական մօտիկներ, բայց նոյն կերպով կը պախարակէ նաեւ այն՝ որ առնոյր զհօրեղբօր իւրոյ կնոջ քուէր դստերն, և այն որ առնոյր զքուէր դստեր քեռոյն հօրեղբօրորդւոյ իւրոյ (ՄԵԾ. 114), որոնք վերջերս ատրճանի խնամութիւններ են։ Ժամանակին նախապաշարեալ սովորութեանց իբր նմոյշ յիշենք նաեւ, որ այդ կիներէն մին գեւերու մատնուած ըլլալով, երբ խաչ ու աւետարան, գիւթութիւններ ու կախարդութիւններ օգուտ չեն ըներ, ժողովուրդը քարեցին զերեսն քաղցին արտեղին, և կինը թողեցին մինչև ի դարանոյն, և ասոր առաւել ի յետոյ իւրեանց աղաղակէին և հարկանէին զերկիր և ասէին, եւ ոչ դեռ ի կնոջէս յայսմանէ, և թագաւորութեան քաղաքին թռչնէին հեռարձակ և աղօթելէ դիմօք կին մարդ ի մէջ հրապարակին, որ այսպէս կոչեալ ասկեա աստուածոց ընծայէին։ Մեծոփեցին կը յաւելու, թէ ներքեմք ի Տէրտէն, զի թողցէ շնորհաւ նորա, զի ոչ կամաւ էր մեղանչական, այլ ակամայ, և եպիսկոպոսներուն և վարդապետներուն ուղղելով խօսքը՝ կը խնդրէ, «այս ասեմ և ընդունել կենացն համար մի նենգել ի սէրն եղբայրական» (ՄԵԾ. 116), ակնարկելով այն պարագային, որ այդ կնոջ ամուսնութեան համար դիմած էին ի հոգևոր առաջնորդս և վարդապետս եկեղեցւոյ, և անոնք հաւանած էին յանդգնօք դատաւորանոյն բարեաց առնել (ՄԵԾ. 115)։ Մենք այս միջադէպները ուզեցինք պատմել, պարզապէս ժամանակին ըմբռնումները պատկերացուցած ըլլալու համար։

**1393.** Ժամանակակից եղելութիւնները քաղելու, և Հայութեան զանազան հաստատութիւններուն պատկանող դէպքերը զանց չընելու համար հետեւեալ տեղեկութիւններն ալ կը յաւելունք։

ԱՂԹԱՄԱՐ ԵՒ ԵՐՈՒՍԱՂԷՄ

Աղթամարի մէջ Դաւիթ կաթողիկոս, Զաքարիայի եղբայրը (§ 1376), իշխանութիւնը վարած է արդիւնաւոր գործունէութեամբ, և օգտակարութեամբ, Շէյխ Ահմէտի հովանաւորութեան ներքեւ (§ 1382)։ Այդ միջոցին բաւական թուով վանքեր ալ ծաղկած են Աղթամարի սահմաններուն մէջ։ Սարի Ս. Գէորգի, Մեծոփայ Ս. Աստուածածնի և Ցիպնայ Ս. Ստեփանոսի վանքերէն զատ, որոնց վրայ խօսուեցաւ, պէտք է յիշել նաեւ Հիզանի Ս. Խաչ վանքը՝ Յովհաննէս Հաւատարարան վարդապետին ձեռքով, և Աղթամարայ Ս. Խաչ մայրավանքը՝ Զաքարիա Փիլիսոփայ վարդապետին ջանքերով։ Դաւիթ կաթողիկոսի կը վերագրուի նաեւ թեմական տուրքերուն մէջ կանոնաւորութիւն մտցնելը, իւրաքանչիւր գիւղի ընկերներուն և կարողութեան համեմատ (ՕՕ. ԲԻՋ. 1195)։ Երուսաղէմի մէջ ալ նոր Հայ վանքեր կը հաստատուէին անօրինական վայրերը, և Ս. Յակոբայ աթոռը կը պարտաւորուէր օտարներու ձեռնձգութեանց

դէմ պաշտպանել իր սրբավայրերը։ Սարգիս պատրիարք Գողգոթայի տիրապետութեան համար նոր հրովարտակ մը կը ստանայ 1393՚ին Պետրոս և Վահրամ վարդապետներու աշխատութեամբ (ԱՍՏ. Ա. 216)։ Գահիրէի մզկիթին հրդեհը քրիստոնէից վերագրուելուն պատճառով, նոր հալածանքներ և սպառնութիւններ տեղի ունենալէն զատ, ընդհանուր հրաման ալ տրուած էր, որ քրիստոնեայք չկարենան ձի և ջորի հեծնալ և ոչ պատուոյ փակեղ գործածել։ Բայց Մարտիրոս եպիսկոպոս միեւնոյն ժամանակ, 1399՚ին կը յաջողէր պաշտպանութեան հրովարտակ հանել տալ Արաբացի հարկապահանջներուն դէմ, և երկրորդ մըն ալ 1402՚ին Մեսրոպ եպիսկոպոս կը հանէր Ճառնելի գերեզմանատան անարգել կիրառութեան համար (ԱՍՏ. Ա. 217)։ Ուխտաւորներու կացութիւնը ճշդելու համար Սարգիս պատրիարք ընդհանուր կանոն մը հաստատել կուտար 1400՚ին, թէ տարիէ աւելի Երուսաղէմ մնացողներ միայն պարտաւոր պիտի ըլլան գլխահարկ վճարել, և թէ Հայեր, Վրացիներ, Հապէշներ և Յոյներ հաւասարապէս ազատ պիտի ըլլան Ս. Գերեզմանի մուտքին համար յատուկ տուրք վճարելէ (ԱՍՏ. Ա. 219)։ Սարգիս պատրիարքի ժամանակը հարկ է վերջացնել 1412՚ին (ԱՍՏ. Ա. 219), թէպէտ երկարաձգուած էր սովորաբար մինչեւ 1417 (ԲԱՌ. 47)։ Ինչպէս գործերէն կը տեսնուի, արդիւնաւոր միջոց մը եղած է Սարգիսի ժամանակը։

**ՈՒՆԻԹՈՐՆԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԸ**

**1394**. Ունիթորներու գործունէութեան ալ նոր զարկ մը տուած ըլլալու համար, Ղուկաս Շահապունեցին գաւառահայր ընտրուելէն ետքը անմիջապէս Հռոմ կ՚ուղեւորէր, նպաստներ և դիւրութիւններ ստանալու։ Այդ առթիւ եւս առաւել կը չեշտուէր Երնջակի Ունիթորներուն ամբողջապէս լատին իրաւասութեան ենթարկուիլը, որոնց վրայ պիտի չկարենային հսկել տեղւոյն եկեղեցական իշխանաւորները, այլ միայն Հռոմէ եկող այցելուները, ինչպէս կը հրամայէ Վոնիփակիոս Թ պապին 1398 յունիս 1՚ին հանած կոնդակը։ Իսկ 1399 ապրիլ 28՚ի կոնդակով ալ Խրիմի մէջ գտնուող Ս. Յակոբ, Ս. Նիկողայոս և Ս. Պետրոս-Պօղոս վանքերը, Հայաստանի գաւառահօր իշխանութենէն զատելով, ուղղակի Հռոմի ընդհանուր մեծաւորութեան կ՚ենթարկուէին։ Նշանակելի է նաեւ այն կարգադրութիւնը, որ Նախիջեւանի Հայ եպիսկոպոսութեան յաջորդող Փրանկիսկոս Դավրիժեցին, պապին կոնդակը չստացած ձեռնադրուելուն համար, պապէն կը մերժուէր, և հակառակ ընկալեալ սովորութեան, փոխանակ Դոմինիկեանի, Փրանկիսկեան լատին կրօնաւոր մը՝ Ստեփանոս Սէկէս՝ Նախիջեւանի եպիսկոպոս կ՚անուանուէր 1398 օգոստոս 26՚ին (ՍԻՆ. 389)։ Դիտելով որ այդ միջոցին էր, որ տեղի կ՚ունենային Տաթեւացիի և գործակիցներուն Հայ եկեղեցւոյ պաշտպանութեան համար արդիւնաւոր ջանքերը, Հռոմ և Հռոմէականք իրենց զօրութիւնը կը դնէին եւս քան զեւս՝ լատինականութիւնը չեշտելու մէջ, ինչ որ անշուշտ իրենց յաջող ելք պիտի չտար։ Զի Հայեր բնական կերպով պիտի խորշէին օտարածէս և օտարաձեւ կարգադրութիւններէն, մինչ թերեւս աւելի հրապուրուած ըլլային, եթէ հայածէս և հայաձեւ կերպարաններով գեղերեսեալ ըլլային Հռոմի հաւատորական ճիգերը։ Ունիթորներու կացութիւնն ու գործունէութիւնը տկարանալու երես բռնած էին արդէն Որոտնեցիին և Ղրիմեցիին աշխատութեամբը, և սկսուած նուազման ճանպան չարունակեցին անոնցմէ ետքն ալ։

# Տ. ՅԱԿՈԲ Գ. ՍՍԵՑԻ

**ՊԱՇՏՕՆ ՈՒ ԺԱՄԱՆԱԿ**

**1395.** Տգեղ պարագաներու ներքեւ սկսած տեսանք Յակոբի կաթողիկոսութիւնը (§ 1388)։ Իւր նախընթացը անծանօթ, եւ իւր ծննդավայրն ալ անորոշ, Սսեցի մակդիրը կը գործածենք, ոչ միայն աթոռէն, այլեւ այնտեղ ալ հաստատուած մէկը ըլլալէն, քանի որ կրցաւ Ռամազան ամիրային պաշտպանութեամբ Կարապետը հեռացնել, եւ անոր տեղը աթոռ բարձրանալ։ Որովհետեւ պակասաւոր եւ հակասական յիշատակներու մէջ օրէն է հաւանական եզրակացութիւններու վրայ հիմնուիլ, կրնանք 1404'ին կամ առ առաւելն 1405'ին դնել Յակոբի կաթողիկոսութեան սկիզբը, մօտենալով շարունակողին նշանակած 1403 թուականին, բայց հետեւելով անոր տուած երկու տարի միայն պաշտօնավարութեան տեւողութենէն (ՍԱՄ. 172)։ Առ այս մեզ կը պարտաւորէ Տաթեւացիին եւ Սսոյ աթոռին միջեւ եղած թղթակցութիւնը, ուր Յակոբի անունը որոշակի գրուած է (ՁԱՄ. Գ. 456), եւ որ տեղի ունեցած է Տաթեւացիին Վասպուրական գալէն ետքը, այսինքն է 1409'ին (ՄՆԾ. 52)։ Իբրեւ գործ եւ արդիւնք բնաւ յիշատակ մը չունինք Յակոբի վրայ. եւ եթէ Տաթեւացիին նախաձեռնութեամբ փոխանակուած գիրն ալ չըլլար, անունը տալու չափ ալ առիթ ունեցած պիտի չըլլայինք։ Արտաքին միջամտութեամբ կաթողիկոսութիւնը ձեռք անցընողի մը, շատ յարմար կու գան այն գեղծումները, զորս Մեծոփեցին կը վերագրէ Սսոյ աթոռակալներուն (ԿՈՍ. 55-59), եւ զորս զանց կ'ընենք այս տեղ յառաջ բերել, յետոյ կրկնութեան չպարտաւորուելու համար։ Ինչ որ մտադրութեան արժանի է, անկանոն ընտրութիւնը եւ անկարգ պաշտօնավարութիւնը գիտնալով հանդերձ, Արեւելեան վարդապետներուն, Տաթեւացին ալ գլուխնին, առանց դիտողութեան եւ դժուարութեան Յակոբի կաթողիկոսական իշխանութիւնը յարգելն է, ոչ միայն ձեռնադրութիւն եւ միւռոն ընդունելու անհրաժեշտ պարագաներու մէջ, այլ եւ իրաւասութեան եւ վաւերականութեան վերաբերող խնդիրներու մէջ։

**ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ ԵՒ ՍԻՒՆԻՔ**

**1396.** Պատմեցինք արդէն, թէ երբ Վարդան Հոգոցեցի վարդապետը, Սուխարու վանքէն Սալնապատ փոխադրուելէ ետքը, այն տեղ կը վախճանի 1406'ին (§ 1381), եւ Գրիգոր Խլաթեցի վարդապետը, որ անոր յաջորդելու կոչուած էր, կանոնաւոր հաստատութիւն մը չէր կրնար կազմել (§ 1383), Սարգիս Ապրակունեցիին օրէն միացած 12 երիցագոյն աշակերտներ կ'որոշէին Տաթեւ երթալ, եւ իրենց ուսումը կատարելագործել Գրիգոր Տաթեւացիի ձեռքին տակ (§ 1381)։ Այս տասներկուքներէն մէկն էր Թովմաս Մեծոփեցի վարդապետը, ժամանակակից պատմիչը։ Վասպուրականցի եւ Սիւնեցի վարդապետներուն բարեգուշակ յարաբերութիւնները այդ ժամանակէն կը սկսէին, որ տակաւ աճելով աթոռին փոխադրութեան ճանպայ պիտի բանային։ Այդ արդիւնքին ծագումը կը պարտինք Որոտնեցիին եւ Գլաձորեցիին ցանած սերմերուն, որոնք տեղական եւ գաւառական բաժանումները զանց ընելով՝ Հայ եկեղեցւոյ ընդհանուր շահերուն հետամուտ եղան։ Բայց յատկապէս պէտք է յիշատակել Ապրակունեցին, որ Աստապատի վանքը թողլու պարտաւորուած ատեն, իւր մտադրութիւնը կը դարձնէր Վասպուրականի կողմը, եւ Սուխարու վանքը կը հաստատէր իւր գործավանքը (§ 1358)։ Սիւնեցի մըն էր՝ որ կու գար Վասպուրականցիներուն համար աշխատիլ, եւ Վասպուրականցիք ուրախութեամբ կ'ողջունէին իրենց եղած այցելութիւնը։ Պէտք չէ մոռնանք որ Վարդան Հոգոցեցին ալ նոյն դիտմամբ աշխատած էր Սուխարու եւ Սալնապատի մէջ (§ 1381)։ Յիշենք Սարգիս Սորբեցին ալ, որ Սարի Ս. Գէորգը կը ծաղկեցնէր (§ 1376), զի ինքն ալ Սիւնեաց աշակերտութեան մէջ զարգացած էր Որոտնեցիին ձեռքին ներքեւ։ Այդ յարաբերութեանց

*մէջ ուրիշ նկատելի կէտ մըն ալ կար, և այն ալ կաթողիկոսական իրաւասութեան տարբերութիւնն էր, որովհետեւ Վասպուրական նահանգ իւր ամբողջութեամբ, ինչպէս և Մոկք և Կորդուք, Աղթամարի կաթողիկոսական իրաւասութեան ենթարկուած էին, իսկ Աղթամարի աթոռը Գագիկեանի օրէն պատապարտութեան ներքեւ էր* (§929), *և Անաւարզեցիին օրով տրուած արձակումն ալ հաստատուն ձեւ մը չէր առած* (§ 1203), *ինչպէս Մխիթարի տուած բացատրութիւններէն կը քաղուի* (§ 1304)։ *Սիւնեաց և Վասպուրականացոց մէջ սկսած փոխադարձ կապը կը ցուցնէ, թէ իրաւասութեանց տարբերութեան և Աղթամարի կացութեան մտադրութիւն չէր դարձուեր. և թէ համաձայն և ամբողջական յարաբերութիւններ կը պահուէին երկու կողմերուն մէջ։ Այդ յարաբերութիւնները ատրճան մը եւս զօրացան, 12 Վասպուրականցիներու Սիւնեաց դպրոցը դիմելովը, զորս Տաթեւացին ընդունեցաւ իբրեւ զորդի իւր սիրելի և բող-ջոյն, յիշելով մանաւանդ թէ Վասպուրականցի մըն էր ինքն ալ՝ Արճիշեցի Սարգիսին որդի* (ՄԵԾ. 50)։

**1397.** *Վասպուրականցի վարդապետներուն Տաթեւ գալը պիտի դնենք 1406'ին վերջերը, Վարդան Հոգացեցիին մեռնելէն քիչ ետքը, զի երկու ամ զանոնք մխիթարեաց Գրիգոր աստուածաբանական ճառիւք* (ՄԵԾ. 51), *Տաթեւէ մեկնելէն առաջ, որ տեղի ունեցաւ Հայոց 857'ին կամ 1408 տարւոյ վերջերը ձմեռնամուտին* (ՓԻՐ. 29), *և կրնար Հայոց 858 ալ ըսուիլ* (ՄԵԾ. 52), *որուն ամանորը կ'իյնար դեկտեմբեր 9'ին։ Իբր աստուածաչունչէ դասախօսութիւն՝ Մեծոփեցին կը յիշէ զչորեքտասան թուղթսն Պօղոսի առաքելոյն, իսկ սուրբ հարց գործերէն «զ*[illegible] *գիրս Աստուածաբանին Գրիգորի», որ է Նազիանզեցիին ճառերուն հաւաքածոյն, և կ'աւելցնէ թէ սկսաւ նաև ուսուցանել զգիրս արտաքին իմաստասիրացն։ Այդ յիշատակութիւններ կը ցուցնեն, թէ ժամանակին ընդունուած ոճն էր, որեւէ հեղինակաւոր գիրք մը ձեռք առնել, և անոր վրայ բացատրութիւններ տալ։ Այնպէս հիացած են նորեկ Վասպուրականցիները Տաթեւացիին առատահոս դասախօսութեանց վրայ, որ Մեծոփեցին կը գրէ թէ ուղղոյց զմիտսն առաւել քան զիմաստասէրսն Հելլենացւոց* (ՄԵԾ. 51), *աւելի բարձր գտած են վարդապետին բացատրութիւնները՝ քան փիլիսոփաներուն հեղինակութիւնները։ Գրիգոր Տաթեւի դասատաց ուսուցչապետը, կամ մեծ վարդապետն էր, իսկ սուրբ ուխտին առաջնորդ էր Առաքել արքեպիսկոպոս Սիւնեաց, հոգեւորդին մեծ վարդապետին, որովհետեւ Տաթեւի վանքը միանգամայն Սիւնեաց առաջնորդարան էր, և վանքն ալ արքեպիսկոպոսին իշխանութեան ներքեւ էր։ Առաքելը աւելի քան Տաթեւացիի քրոջ, քեռիի որդի կը կարծենք, զի չենք կարծեր թէ Տաթեւացին, որ հազիւ 44 տարեկան Ապրակունիքէ Տաթեւ փոխադրուեցաւ, արդէն արքեպիսկոպոսութեան աստիճանին բարձրանալու տարիք ունեցող քրոջ որդի կարենայ ունենալ* (§ 1367)։ *Տաթեւացիին չուրջը կը գտնուէին իւր 16 վարդապետներէն 13'ը, զորս արդէն յիշեցինք* (§ 1379), *իսկ վերջին երեքը Մատթէոս Ուխտեցի, Մկրտիչ Փայտակարանցի և Ստեփանոս Թաւրիզեցի յայլ տեղեաց եկած կ'ըսուին։ Անուանով յիշուածներէն զատ, իրեն մօտ ունէր նա քահանայս բազումս աւելի քան զվարդապետն ոգի* (ՄԵԾ. 51)։ *Իսկ 12 նորեկները յիշեցինք արդէն Ապրակունեցիին աշակերտներուն վրայ խօսածատեննիս* (§ 1380)։ *Երկու տարի տեւեց Տաթեւի մէջ վայելած հանգիստ կեանքերնին, վասն զի սկսան նեղուիլ ի հալածմանէ անօրինաց* (ՄԵԾ. 52), *և տեսան որ այլեւս ոչ գոյր հանդարտութիւն և ոչ հանգիստ խաղաղութեան վասն անօրինաց չարութեան։ Մեծոփեցին չճշդեր թէ ինչ հալածում և ինչ խռովութիւն սկսաւ Սիւնեաց կողմը, բայց կ'երեւի թէ Լէնկթիմուրի մահուանէ ետքը Թաթարներուն մէջ տեղի ունեցած՝ ներքին խռովութեանց կ'ակնարկէ։ Տաթեւացին պահ մը մտածեց ամենեցուն գնալ յԵրուսաղէմ, և առանձնացեալ ի զբաղմանց աշխարհի փախել* (ՄԵԾ. 24), *բայց հարկաւ դիւրութիւններ չունեցաւ, որ տանել իւր աշակերտները ելն ի քաղաքն Արճիշոյ, որոշել իւր բնակութեան զաստուածահաճոյ ուխտն Մեծոփայ* (ՄԵԾ. 52)։ *Ինքն Տաթեւացին, որ իրեն ինդրող*

ՏԱԹԵՒԱՑԻՆ ՄԵԾՈՓ ԿՈՒ ԳԱՅ

բանէ մականունը կու տայ, 1408'ին ի Հրեշտակաբնակ վանքն Մեծոփայ եկած, և անդ յիշեալ ըլլալը կը գրէ (ՓԻՐ·29), որով տարուան վերջերը և ձմեռուան սկիզբները Տաթեւէ Մեծոփ անցած ըլլալը կը հետեւի: Վանքին առաջնորդն էր Յովհաննէս Մեծոփեցի, որ աւարտելու մօտեցուցած էր փառաւոր տաճարին շինութիւնը (§ 1382): Նա փութաց Տաթեւացիին ընդունելութեան, և գնացեալ դէմ ընդ առաջ հոգեւոր ծնողին իւրոյ, և բերեալ յանապատն իւր հանգոյց զնա, (ՄԵԾ·59): Տաճարին շինուածն ալ աւարտելուն մեծահանդէս նաւակատիք կատարեց, Տաթեւացիին ներկայութեամբ: Այն տեղ ժողովեցան [illegible] վարդապետք, զորս յիշեցինք (§ 1381), և [illegible] կրօնաւորք, և Տաթեւացին պայծառացեալ լուսաւորեց աստուածային վարդապետութեամբ զամենեսին (ՄԵԾ. 59), մեկնեաց դասիւ զաւետարանն Յովհաննու աւետարանչին, զգիրս Յոբայ նահատակին և զգիրս մեկնութեան վարդապետացն Գէորգայ Լամբրոնացւոյ և Արիստակեսի (ՄԵԺ·52), զորս Տաթեւացին ինքն ալ կը յիշէ ինքնագիր յիշատակարանին մէջ (ՓԻՐ·29): Իսկ Յովհաննէս անճառելի առաքինութեամբ զուարճանայր, և էր ողորմած հայր [illegible] (ՄԵԾ. 59), և կայր ի վերայ բազմութեան եղբարցն և կերակրէր զամենեսեան հացիւ և հանդերձիւ (ՄԵԾ.5):

**1398.** Տաթեւացին և իրեն հետեւորդները Սիւնիքէն եկած, հարկաւ հաչտ աչքով պիտի չդիտէին Աղթամարայ կաթողիկոսութեան դիրքը, և Մեծոփեցին ալ կը վկայէ,

**ԱՂԹԱՄԱՐԻ ԿԱՊԱՆՔԸ**

թէ ի նոյն ժամանակի ի խնդրէր եկեալ վան կողմանց Աղթամարայ, պէտք զգացին հետազօտել կապանքին ծագումն ու պարագաները: Այս նպատակով պատրաստուած կ'երեւի Վան աթոռոյն Աղթամարայ, որ էին ի ներքոյ բանադրանաց գրուածը, որքան Գրիգորէ Տաթեւացւոյն՝ առաքելաշնորհ վարդապետէ լուծեալ (ԿԱՆ·170-173): Այս քննութիւններէն ետքը Տաթեւացին մեծահանդէս ժողով արարեալ արձակեաց զամենեսեան ի կապանաց նոցա կաթողիկոսացն մերոց (ՄԵԾ·52): Իրողութիւնը կ'արժէր որ մանրամասնօրէն պատմուած ըլլար, այլ կ'երեւի թէ Մեծոփեցիին զգացումները չեն ներած իրեն. խորունկը մտնել այնպիսի եղելութեանց, որոնք չատ պատուաւոր պիտի չըլլային Աղթամարի աթոռին, որին ինքն ալ վիճակայիններէն էր, և որուն փառաւորութեան համար ալ մեծ փափաք ունէր, և մինչեւ վերջ ճիգեր ալ թափեց: Աղթամարի Հաւաքարանը չյիշեր թէ Տաթեւացին Աղթամարով զբաղած և ժողով գումարած և զայն եկեղեցական կապանքէն արձակած ըլլայ: Աթոռին մէջ տեղի ունեցած չփոթութիւններն ալ Հաւաքարանը Դաւիթ կաթողիկոսի մահուանէն. կամ 1423'էն ետքը (§ 1376), այսինքն Տաթեւացիին մահուանէ ալ բաւական ետքը կը թողու: Զամչեանի պատմութեամբ, որ անչուչտ աղբիւր մը ունեցած է, Աղթամարի աթոռին չփոթութիւնները Տաթեւացիին գալէն առաջ սկսած են, և Տաթեւացին չփոթութեանց վրայ հասնելով, խնդիրը ձեռք առած և ժողովով լուծում տուած է: Այս պատմութեանը համեմատ երկու պարագաներ կը ցուցուին իբրեւ չփոթութեանց պատճառներ: Առաջինը կաթողիկոսէն դրժգոհութիւն, երկրորդը աթոռներու բաժանումը ջնջելու միտում: Դաւիթ ապիկար անձ մը եղած չէ և իւր օրով աթոռին զարգացման ալ ջանքեր եղած ըլլալը տեսանք (§ 1393): Առ առաւելն պէտք է մնոր տարապարտ ճոխանալուն, կամ թերեւս բռնանալուն վերագրել դժգոհութեանց պատճառը, յիշելով մանաւանդ տուրքերու մասին կարգադրութիւնները (§ 1393): Աւելի հաւանական կը տեսնուի երկրորդ պարագայն, որուն կ'ակնարկէ Մեծոփեցին ալ, պատմելով թէ Տաթեւացին [illegible] աթոռոյն Աղթամարայ վրայ ուշադրութիւն դարձնելով, վարդապետաց տուաւ ի ձեռնադրութեան (ՄԵԾ· 34): Սակայն նպատակը աւելի հեռաւոր կէտ մը կը դիտէր: Կիլիկիոյ աթոռին անկումը ընդհանուր ազգին մտադրութիւնը կը հրաւիրէր, մանաւանդ Տաթեւեան աչակերտութեան աչքին, իբր եկեղեցւոյ վերանորոգութեան կենսական կէտ մը: Պէտք էր հայրապետական աթոռ սզատ'ի Կիլիկիոյ վարակեալ մթնոլորտէն, սակայն ցորչափ օրինաւոր յաջորդութեան գիծը այն տեղ մնացած էր, դիւրին չէր այդ կէտը յանկարծ լուծել և անպատրաստ կերպով

*որոշման մը յանդիլ։ Աղթամարի աթոռն ալ բաւական ճոխութիւն ստացած էր, և Մեծ-Հայոց կաթողիկոսութեան ձեւ առած էր, մինչ Կիլիկիոյ աթոռը Փոքր-Հայոց կաթողիկոսութեան անունով կը յիշուէր անդրանին Մխիթարի օրէն* (ՄՆՍ. ԻԵ. 1258). *և այդ կոչումները Աղթամարին կարեւորութիւնը կը բարձրացնէին։ Զմոռնանք յիշել, որ նոյն միջոցին Աղթամար նստող Զաքարիա և Դաւիթ կաթողիկոսները, աւելի կ'արժէին քան Սիս նստող Կարապետն ու Յակոբը։ Այդ ամէն պարագաներ հիմնական փոփոխութեան մը և կարեւոր բարենորոգութեան մը պէտքը կը զգացնէին եկեղեցւոյ շահերով տոգորուած հոգիներուն։*

**1399**. *Զամչեանի յառաջ բերած թուղթը, թէպէտ ընդհանուր Վասպուրականցիներէ գրուած կ'ըսուի, այլ եկաք ի կողմանս Վասպուրական ծովու՝ բացատրութիւնը կը ցուցնէ թէ նոր եկող Սիւնեցիներու, և Սիւնեցիներու հետ չփուած Սուխարեցի վարդապետներուն միտքն է որ կը տիրէ, և անոնց թելադրութեամբ և ազդեցութեամբ է, որ ամենայն կարգաւորք և աշխարհականք նմանէց եղեն անկման կաթողիկոսին* (ՉԱՄ. Գ. 456)։ *Գահընկէց կաթողիկոսը պէտք է Դաւիթ եղած ըլլայ, որչափ ալ կարող և ազդեցիկ, այլ Տաթեւացիին ազդեցութեան դէմ մրցելու անբաւական։ Կաթողիկոսին գահընկէցութեամբ անձի փոփոխութիւն չէ ընդհանուր նպատակը, այլ Աղթամարի կաթողիկոսութեան դադարումը, չէ ու կայցէ տանն՝ որոյ հիմն ի վերայ աւազի է եդեալ, և ոչ ի վերայ վիմի* (ՉԱՄ. Գ. 456)։ *Այս կերպով կապանքին պատճառը դադարելով, կապանքն ալ ջնջուած կ'ըլլար, և այն յայտարարութիւնն է զոր հռչակեց Տաթեւացին, Աթոռահանդէս ժողովով արարեալ, հարկաւ Մեծոփայ վանքը, որջակէաց զանկեալ ի կողմանց Հնոց կաթողիկոսացն մերոց* (ՄԵԾ. 52)։ *Մեծոփեցին կը սիրէ պաշտելի վարդապետը բարձրացնել, անոր վերագրելով գործին իշխանական մասն ալ, սակայն այնպէս չէր ըմբռնեը ինքն Տաթեւացին, որ գիտութեամբ և արժանաւորութեամբ բարձր կրնար ըլլալ, բայց իշխանական նկարագիրը չունէր։*

ԱՂԹԱՄԱՐԻ ԱՐՁԱԿՈՒՄԸ

*Ուստի պարտաւպատշաճ կանոնաւորութեամբ կը դիմէր Յակոբ կաթողիկոսին, որ կանոնական արձակումը տայ, թելադրելով ալ, որ ամէն տեղւոյ յանուանէ, և վարդապետացն և քահանայիցն թուղթ օրհնութեան գրէ, այլ և ննջեցելոց նոցա արձակումն ի կապանաց անէծիցն, և բոլոր Աղթամարի վիճակներուն եպիսկոպոսներ ձեռնադրէ և միւռոն յղէ։ Մութ կը մնան միայն թէ որոնք են բոլոր այն երեք երկիրք, զոր Սսոյ աթոռին ի հնազանդութիւն բերած կ'ըսէ* (ՉԱՄ. Գ. 456), *այլ հաւանականօրէն կրնանք մեկնել՝ Վասպուրական և Մոկք և Կորդուք երեք նահանգներուն վրայ։ Սոյն նամակին մէջ Յակոբի տրուած գովեստները, որքան հաճոյից ուղէ, ծէ-ծիծաղ գեղաութեան տէր, և վէհ փերարէ, պէտք է առնել իբր պատշաճից բացատրութիւններ, ինչպէս իշխանաւորներու ուղղուած գրութիւնները կը կազմուին, աւելի պաշտօնին բարձրութիւնը դիտելով, քան թէ պաշտօնավարողին արժանաւորութիւնը։ Տաթեւացիին գլխաւորութեամբ տրուած որոշումը հաղորդուեցաւ ամէն կողմ, դէպ Արեւելք մինչև ի յաթոռն Աղուանից, դէպ հարաւ մինչ ի Պարսկաստան, դէպ հիւսիս մինչ ի Վրաստան, և դէպ արեւմուտք մինչեւ Սսոյ աթոռն սուրբ։ Յակոբ փութաց պատասխանել ամենայն ուրախութեամբ, ուր զինքն կ'անուանէ կաթողիկոս ամենայն Հայկազնեաց հանուրց և Վաղարշապատու, որով կը յայտնուի թէ Էջմիածինէ դուրս գտնուող կաթողիկոսներ միշտ ինքզինքնին պանդուխտ կը սեպէին և աթոռին բուն տեղը Էջմիածին կը ճանչնային, և գիրը կ'ուղղէ յականաւոր մայրաքաղաք Արճէշ, և ի սուրբ ուխտն Մեծոփայ, որով կը հաստատուի Վասպուրականացւոց ժողովին Մեծոփայ վանքը գումարուած ըլլալը։ Ոչ միայն օրհնութիւններ կը ղրկէ, այլեւ հայրապետական հեղինակութեամբ կը յայտարարէ, թէ այսմ էր հոգեւորական բարձր հրամանի հաստատութեան է* (ՉԱՄ. Գ. 457)։ *Յիշուած չէ նոր եպիսկոպոսներ և միւռոն յղած ըլլալը, բայց ենթադրելի չէ որ չոր թուղթով մը բաւականացած ըլլայ, այլ հարկաւ պատշաճ պատուիրակութիւն մըն ալ ճանպայ հանած է։ Տաթեւացին 1408 ձմեռամուտին Մեծոփ հասած ըլլալով* (§ 1397), *նոր գա-*

րումէն առաջ գործի ձեռնարկել չէր կրնար, և հազիւ թէ ամառուան յառաջանալէն ետքը կրնար գործի ձեռնարկել, միտքերը պատրաստել, ժողով հրաւիրել և հաւաքել, որոշում տալ, գիրերը յղել, այնպէս որ հազիւ 1409'ին վերջերը կրնար Յակոբ կաթողիկոս եղելութեան տեղեկանալ։

**ՏԱԹԵՒԱՑԻՆ ԿԸ ԴԱՌՆԱՅ**

**1400.** Յայտնի կը տեսնուի որ այդ մեծ շարժումը կատարուած է առանց Դաւիթ կաթողիկոսի համաձայնութեան, թէ ոչ ընկճան կաթողիկոսին որոշում տրուած չէր ըլլար։ Այս պատճառով Դաւիթ զինուեցաւ իր անձին և պաշտօնին պաշտպանութեան, ձեռք առաւ այն ամէն միջոցները, որոնք կրնային նպաստել, այսինքն է կաշառքի և բռնութեան ոյժերը, կողմնակիցները զօրացուց և աճեցուց, և տեղական իշխանութիւնը միջամտութեան հրաւիրեց, անոր կասկածները գրգռելով արեւմուտքի կողմէն եղած ոտնձգութեանց դէմ, և քաղաքական տեսակէտներ վերագրելով պարզ հոգեւորական գործողութեան մը։ Մեծոփեցին որոշ չգրեր այդ պատճառով տեղի ունեցած անցուդարձը, սակայն իւր կցկտուր ակնարկները յայտնի կը ցուցնեն, թէ Դաւիթ ուղղակի հալածանք հաներ Տաթեւացիին դէմ, իբրեւ չփոթութեանց սկզբնապատճառի, և գործը այնչափ մղեց, որ Տաթեւացին պարտաւորուեցաւ փախուստով ինքզինքը ազատել։ Արդէն Մեծոփէ մեկնիլը շատ չոր կերպով բացատրուած է, թէ ի մեռ ամ եւ- եալ քնոյ (ՄԵԾ. 34), և այդ խորհրդաւոր լռութիւնը աւելի կասկածաւոր կը դառնայ, երբ կը գրէ, թէ մեկնելէն առաջ՝ եկեալ աշակերտք նորա կոչէն ժամանակս ինչ անոր մօտ, և յետոյ ԳԱՂՏԱԳՈՂԻ ԱՌԵԱԼ ԳՆԱՑԻՆ ի գաւառն Արարատեան (ՄԵԾ. 53)։ Ոչ մի պարագայ չէր ստիպեր որ Տաթեւացիին աշակերտները յանկարծ գան և անոր շուրջը հաւաքուին, եթէ ծանր խնդիր մը յուզուած չըլլար, և ոչ ալ հարկ կ'ըլլար Տաթեւացիին գաղտագողի մեկնիլ, եթէ վտանգ մը չնշմարուէր։ Տաթեւացիին ձեռնարկը ձախողած էր, և Մեծոփեցին կը խղճէ իր վարդապետին աննպաստ բան մը գրել։ Աղթամարի կաթողիկոսը աննահանջ քայլ մը առած էր, և Մեծոփեցին չուզեր զայն մեղադրել, վասնզի իւր գրած ատենը Աղթամարի աթոռին հետ հաշտ էր, և իրարու գործակից էին Սսոյ աթոռին տեղափոխութեան համար։ Այդ մտածումներն են, որ պատմիչին կ'արգելեն տեղնիտեղօք պատմել Աղթամարի կողմէն Տաթեւացիին դէմ յարուցուած հալածանքը, և մեծ վարդապետին փախուստի պարտաւորուիլը։ Ինչ որ սակայն դիւրին է քաղել իրեն գրիչին ոճէն, և թերեւս յականայից սպրդած պարագաներէն։ Այդ եղելութիւնները պէտք է զետեղել 1410 տարւոյ ընթացքին մէջ։ Մեծոփեցին կը գրէ, թէ Տաթեւացին ամ Ժ լման բնակեցաւ ի սուրբ ուխտն Մեծոփայ (ՄԵԾ. 34), սակայն մեք այդ լման տարին ոչ թէ պարզ բնակութեան, այլ արդիւնաւոր ընակութեան, կամ որ նոյն է, ուսուցչական ժամանակին վրայ պիտի մեկնենք, քանի որ 1408'ին վերջերը եկած ըլլալը իւր յիշատակարանէն կը ճշդուի (ՓԻՐ. 29), իսկ 1410'ին մեկնած ըլլալը Մեծոփեցին կը չեշտէ։ Իբրեւ ուղիղ պէտք է ընդունիլ այն կտորը, ուր Հայոց 858'էն տարի մը ետքը կը դնէ մեկնիլը (ՄԵԾ. 52), և ոչ թէ 868'էն ետքը (ՄԵԾ. 53), զի այդ հաշուով տասնըմէկ տարի մնացած կ'ըլլար Մեծոփի մէջ։ Ստոյգ ալ հազիւ տարի մը աշխատած ըլլալու միջոց կը մնայ, եթէ հանելէն ետքը պէտք եղած պատրաստութեանց, և մեկնելէն առաջ քաշուած սպրելու միջոցները հաշուի առնենք։

**ՏԱԹԵՒԱՑԻԻՆ ՄԱՀԸ**

**1401.** Տաթեւացին Գրիգոր քաղցրաքաղէ ուղեւորութեան պարտաւորուած ըլլալով, նեղութիւններ ալ պիտի կրէր, զի ինչպէս գործերու ընթացքը կը ցուցնէ, մարմնոյ առողջութիւնն ալ կորուսած էր, թէպէտ տակաւին 64 տարեկան։ Սաղմոսավանքի մէջ մնաց ժամանակ մը, ուր գլխաւոր խնամեց մեծ վարդապետն Յակոբ Սաղմոսավանեցի, հոգեւոր հարազատն էր, բայց իւր փափաքն էր դառնալ իւր սիրած օթարանը՝ Տաթեւի դպրեվանքը, ուր իւր երջանկութիւնն էր վայելած և արդիւնաւորութիւնն ունեցած։ Թերեւս մտադրէր ալ ուրիշներու թելադրութեամբ Մեծոփ գացած ըլլալը։ Վասպուրականցիք չուզեցին

լքանել մեծ վարդապետը, և մեք ամենեքին կ'ըսէ Մեծոփեցին, ընկերներուն ակնարկելով, վարդապետք և աշակերտք գնացեալք առ նա, այսինքն է Սաղմոսավանք խմբուեցան։ Տաթեւացիներ ալ կ'ուզէին իրենց մօտ ունենալ պաշտած վարդապետնին, ուստի ժամանակէր եղելոցն և վարդապետն մեր Առաքել, Սիւնեաց մետրապոլիտը, անձամբ եկաւ իրեն հետ եկան նաև աշակերտք Գրիգորի ի Սիւնեաց ի սուրբ առաքելոյն Ստեփանոսոյ և Սաղմոսավանքէն տարան Տաթեւ, կարծելով թէ սիրելի վանքին մէջ հոգին աւանդելու և մարմինը հողի յանձնելու համար։ Տաթեւացին իւր վախճանը մօտալուտ զգալով, փութաց Տաթեւի մայրավանքը հասնելուն պէս իւր յառաջացեալ աշակերտներուն ծայրագոյն աստիճանը տալ, որպէսզի Որոտնեցիի սկսած և իւր ծաղկեցուցած գործը շարունակեն։ Իրաւ ալ յետ ութն աւուր գնալոյ նորա հիւանդացաւ, զի արդէն հիւանդագին եկած էր, և ութ օրէն մահիճ ինկաւ, և փոխեցաւ յաստի կենաց ի հանդերձեալն (ՄԵԾ·53), և օրհասն մահուան եկն կոչեաց զնա յերկնային փառսն (ՄԵԾ·34)։ Ցանկարծական մահուան ձեւը չեն ցուցներ այդ բացատրութիւնները, բայց և ոչ ալ կը ճշդեն թէ որչափ ատեն տեւեց մահաբեր հիւանդութիւնը, եթէ չուզենք աւուրս ութ առողջ շրջելու բացատրութիւնը հիւանդութեան տեւողութեան վրայ իմանալ։ Ամսաթիւ չունինք, այլ միայն ըսուած է թէ մահը տեղի ունեցաւ յաւուր տօնի Նախավկային Ստեփաննոսի (ՄԵԾ·60), որ 1410'ին հանդիպած է դեկտեմբեր 25'ին, կամ հայկական տոմարով 860 նաւասարդ 17'ին, և չենք գիտեր թէ ինչու Յայսմաւուրքը ապրիլ 27'ին կը դնէ անոր յիշատակը (ՅԱՑ·531), եթէ Մեծոփեցի Յովհաննէսի մահուան հետ շփոթուած չէ։ Եթէ հիւանդութեան ութերորդ օրը վախճանած, և հասնելուն ութերորդ օրը հիւանդացած պիտի հաշուենք, դեկտեմբեր 11'ին կամ նաւասարդի 3'ին Տաթեւ հասած, և դեկտեմբեր 18'ին կամ նաւասարդի 10'ին հիւանդացած պիտի հաշուենք։ Մարմինը թաղուեցաւ նոյն վանքին մէջ, ուր և մինչեւ այսօր կը պատուուի անոր գերեզմանը (ՍԻՆ·236)։ Հարկաւ թաղումը մեծահանդէս կատարուեցաւ Առաքել մետրապոլիտին գլխաւորութեամբ և Վասպուրականցի վարդապետներուն ներկայութեամբ, որոց գլուխը կը գտնուէր Յովհաննէս Մեծոփեցին (ՄԵԾ·53), և յանուանէ կը յիշուին Թովմաս Մեծոփեցին, Մկրտիչ Մեծոփեցին, Յակոբ Ովսաննացին և Մկրտիչ Բերկրեցին (ՄԵԾ·61)։

ՏԱԹԵՒԱՑԻԻՆ ԱՐԴԻՒՆՔԸ

**1402**. Գրիգոր Տաթեւացի Հայ եկեղեցւոյ երանաշնորհ վարդապետներուն շարքին վերջինն է, փառաբանուած և տօնուած յատուկ յիշատակով, և գովուած Եռամեծ կոչմամբ, որ գրեթէ մակդիր անուն մը դարձած է։ Այդ արտասովոր փառքին բուն պատճառը հաստատուած է իւր անխոնջ աշխատութեան վրայ, որով դէմ դրաւ ունիթորական հոսանքին և աղթարմայական վարակման, որոնք օգուտ քաղելով Հայ ազգին և Հայ եկեղեցւոյ անկած և տկարացած կացութենէն, կը յուսային զայն ընկլուզանել, և ազգային եկեղեցւոյ գոյութիւնը վտանգել։ Գրիգոր հետեւելով նոյն ուղիղ շաւիղին, զոր ուսած էր, իւր արժանաւոր վարդապետէն, Որոտնեցի Յովհաննէսէն, և իւր կողմանէ աւելցնելով ինչ որ հանճար և սիրտ իրեն կը թելադրէին, ինքզինքը նուիրեց սոսկ ուսումնական ճիւղին, կամ պաշտօնական բառով՝ վարդապետական ընթացքին. գրեց ու քարոզեց, սորվեցուց ու աւանդեց, և Տաթեւական աշակերտութեամբ ալ էր կանգնեցաւ հայադաւան ուղղափառութեան, և զայն ազատեց իւր վտանգեալ վիճակէն։ Այդ անդուլ ջանքին և պայծառ արդիւնքին հանդէպ երախտագիտական պարտք մըն է, զոր կը կատարէ եկեղեցին անոր յիշատակը տօնելով, որուն սկզբնաւորութեան թուականը ճշդուած չենք գտներ։ Եւս առաւել չենք իմանար թէ ինչու մեծպահքի ոչ-հանդիսական օրերուն մէջ դրուած է (ՏՕՆ·45), որ իւր մահուան տարեդարձին հետ ալ համեմատութիւն չունի (§ 1401)։ Նոր վերջացած դարուն սկիզբները, միաբանական նպատակի հետեւողութեամբ, պահ մը ընդհատած կը գտնենք անոր տօնը, և այս պարագային հետեւանքը եղած է՝ Յայսմաւուրքի վերջին տպագրութեան մէջ յիշատակին ալ

*զանց ըլլալը, ինչպէս Որոտնեցիի համար ալ յիշեցինք* (§ 1366)*։ Տաթեւացին անկասկած պէտք է դասել ժամանակին գիտնականներուն շարքը։ Հարցմանց գիրքը, թէ ոճով և թէ պարունակութեամբ համահաւասար կերպարան և արժէք ունի, միջին դարու հռչակեալ լատին աստուածաբաններուն, Թովմաս Ակուինացիի, Ալբերտոս Սուաբեցիի, և Սկովտոս Երինացիի* (Thomas Aquinateusis, Albertus Suevieusis, Scotus Er:gena) *գործերուն հետ, հանգիտակշիռ առաւելութիւններով և համանման թերութիւններով։ Ասկէ կը հետեւցնենք թէ ոչ միայն լատիներէնի հմտութեամբ, այլ և Լատիններուն ընդունած ձեւերով ուզած է մաքառիլ անոնց դէմ։ Մինչեւ իսկ կրնանք աւելցնել, թէ Հարցմանց գիրքին մթին բացատրութիւններ կրնան լուսաբանուիլ Սկոլաստիկեաններուն լատիներէն դարձուածներուն համեմատութեամբ։ Իրաւ ներկայ դարուս մէջ հետեւելի չեն այլեւս Տաթեւացիին ձեւն ու ոճը, ինչպէս գործածելի չեն արեւմտեան Սկոլաստիկեան ոճերը, սակայն ժամանակին Լատիններուն դէմ իրենց զէնքերով մաքառելու հարկը ստիպած է Տաթեւացին, Հարցմանց գիրքին մէջ իւրացնել և Հայոց սեփականել տալ նաեւ այնպիսի վարդապետութիւններ, որոնք Լատիններէն առջեւ կը գրուէին, և թէպէտ Հայ եկեղեցւոյ սեփական չէին; բայց խնդիրի նիւթ եղող կէտերէն ալ դուրս կը մնային։ Կ'երեւի թէ Տաթեւացին ուզած է այնպէս իմն ցուցնել, թէ Հայ եկեղեցին թերի բան մը չունի՝ իւր ընդհանուր վարդապետութեան մէջ։ Այսպէս են եկեղեցւոյ խորհուրդներուն եօթը թիւը, և վերջին օծումը* (ՏԱԹ. 587)*, մեղքերու տեսակները և աստիճանները* (ՏԱԹ. 555)*, Հաղորդութեան բացատրութիւնը* (ՏԱԹ. 557)*, ազգաբանական ճիւղահամարը* (ՏԱԹ. 611)*, և այլ նմաններ։ Հարցմանց գիրքին ետքը գլխաւոր գործն է Ամառան հատոր և Ձմեռան հատոր անուններով երկուքի բաժնուած քարոզգիրքը, վարդապետական տեսութիւններով ճոխացած։ Ուրիշ գործերէն շատերը յիշեցինք պատմական կարգին, և զորս ցուցակագրած է Յայսմաւուրքը* (ՅԱՅ.533)*, և որոնցմէ հնար է այսօր ալ օգտուիլ, որչափ ալ ոճը ընտել չըլլայ այլեւս մեր գործածական կերպին։ Այդ գրուածներն են որ անմահացուցած են Տաթեւացիին անունը, և աւելի փառաւորած, քան եթէ հայրապետական աթոռ բարձրացած ըլլար։*

ՎԱՐԴԱՊԵՏԱԿԱՆ ԱՍՏԻՃԱՆՆԵՐԸ

**1403**. *Գրական երկասիրութեանցը հետ արդիւնաշատ եղած է Տաթեւացին իւր ընդարձակ ուսուցչութեամբը և բազմաթիւ աշակերտներովը, որ ինչպէս ըսինք ներկայիս գտնուող Հայ վարդապետութեան հիմն ու աղբերակն է* (§ 1367)*։ Վերեւ քիչ մը բան ըսած ենք իւր աշակերտներուն վրայ. բոլորն ալ Տաթեւացիին գործունէութեան արգասիք պէտք է համարուին։ Վարդապետական աշխատութեան մասին ունեցած ջանքին և անոր արդիւնաւորութեան մասին սնուցած զգացումին արտայայտութիւնն եղած է վարդապետական աստիճանին տուուչութեան համար կազմած ծիսական կարգը, զոր յօրինեալ է Տաթեւացին, ինչպէս Մաշտոցին մակագրութեան մէջ գրուած կայ* (ՄԱՇ. 281)*։ Յօրինուած կանոնը երկար է իւր կազմութեամբ և ծանր է իւր պարունակութեամբը, և ուրիշ ազգերու մէջ գործածուած ձեւերէն տարբեր ըլլալուն, պէտք է ընդունիլ, թէ Տաթեւացիին միտքին ստեղծումն է։ Ուրիշ ազգերու մէջ վարդապետական աստիճանը իւր ուսումնական կերպարանը կը պահէ, և Պսակաւորի, Արտօնաւորի ու Մագիստրոսի* (Bachelier, Licencié, Docteur) *երեք աստիճաններով կը լրանայ։ Հայ վարդապետութիւնը, որ աստուածաբանութեան մագիստրոսի աստիճանին կը պատասխանէ, Տաթեւացիին դրութեամբ ամբողջապէս եկեղեցական կերպարանի վերածուած է,* 14 *աստիճաններու դասաւորութեամբ, թէպէտեւ ամէն աստիճաններ իրենց յատուկ գոյութիւն և նշանակութիւն չունին, այլ միայն երկու բաժանումներ կան, մէկը* 4 *և միւսը* 10 *աստիճաններով, որ Փոքր և Մեծ, կամ Մասնաւոր և Ծայրագոյն անուններով կ'որոշուին։ Հին ու Նոր Կտակարանէ քաղուած ընթերցուածներ, և շարականներէ հաւաքուած յարմար պատկերներ կը կազմեն արարողական մասը, իսկ գաւազանին աստիճաններուն թուով կրկին*

և կրկին տուչութիւնները՝ կը պատկերացնեն վարդապետութեան նիւթ եղող կէտերուն տարբերութիւնները, և պաշտօնին ընդարձակութիւնը կը ցուցնեն։ Ուսմանց ընթացքը լրացնողներուն տրուած աստիճանը՝ մասնաւորն էր, իսկ ծայրագոյնը պահուած էր վարդապետաց վարդապետներուն, որոնք վանքերու կամ վանական դպրանոցներու կամ վարդապետանոցներու մէջ իրենց յատուկ աշակերտութիւն մը կը կազմէին։ Զենք ուզեր պատմութիւնները ընդհատելով համեմատութեան դնել այդ սկզբունքը, և այժմեան Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան մէջ տիրած սովորութիւնը, ուր անուններու անգամ ծայրագոյն աստիճան կը տրուի, մինչ եթէ պէտք էր ունայնամիտ ակնկալութիւններ գոհացնել, հնար էր հինգերորդէն մինչև չորեքտասաներորդ աստիճաններուն մէջէն տարբեր բաժանում ալ կազմել, և օրինակ իմն, Առօֆ վօրգօղեօլ աստիճան մըն ալ ստեղծելով աստիճանաւոր բարձրացման ձգտումներու յագուրդ տալ։ Տաթևացիին կազմած արարողական ձևը, իր ընդարձակութեամբը նպատակ ունեցած է ուսումնականութեան գերակշռութիւնը բարձրացնել, և կերպով մը անոր այնպիսի դիրք մը տալ, որ նոյն իսկ եպիսկոպոսականէն աւելի փայլ մը ունենայ։ Այս միտքը այնչափ զօրացաւ, որ մինչև վերջին դարուն սկիզբները ծայրագոյն աստիճան ունեցող եպիսկոպոսներ, վարդապետի պատուանունով կը կոչուէին, իբրև աւելի փառաւոր կոչում մը։ Այդէն Մաշտոցի խորագիրն ալ ծայրագոյնները կ'արտօնէ եկեղեցւոյ մէջ նստել ի վերայ աթոռոյ, և ծախել ի ծախ նոցա արքեպիսկոպոսացն, հրամայելով լինել էծրէօ ղվէմ օնշարժելէօ, և ոչ մի թերութիւն ունենալ ի հաւատս, ի կարգս և ի կրօնս խորհրդոց, և ինչ որ կը քարոզեն՝ ընդունել ի նոցանէ (ՄԱՇ. 337)։ Արտօնութիւնները կիրառութենէ դադարած են, անշուշտ անոր համար, որ ծայրագոյն վարդապետներ տարապայման աճած, և իրենց նշանակութիւնը կորուսած են, պարտաւորիչ պայմաններուն չեն պատասխաներ, և պէտք եղած ձիրքերով ճոխացած չեն։ Շատ նշանակալից է, նոյն իսկ Տաթևացիին, Որոտնեցիի մահուան մօտ ծայրագոյն գաւազան ընդունիլը (§ 1366)։

**1404.** Տաթևեան հաստատութիւնը Գրիգորի մահուամբը չդադրեցաւ, բայց թէ ո՛վ նստեցաւ Գրիգորի վարդապետական աթոռը՝ Մեծոփեցի պատմիչը յանուանէ յիշած չէ։ Տաթևացիին աշակերտները համրած ատեն առաջին դրած է Մխիթար Տաթևացին (ՄԵԾ. 50), բայց Մխիթարի անունը ուրիշ տեղ յիշուած չենք գտներ, մինչ Գրիգորի մահուանէն 30 տարի ետքը, իբրև վարդապետներու առաջին, և իբրև վարդապետ և առաջնորդ կը յիշուի Յովհաննէս Հերմոնեցին (ԿՈՍ. 51), որ երկրորդ է նախասացեալ ցուցակին մէջ Մխիթարէ ետքը (ՄԵԾ. 50)։ Այսչափը կը բաւէ մեզի հետեւցնելու, թէ Մխիթար Գրիգորէ առաջ կամ քիչ ետքը մեռած է, իսկ Գրիգորի գործին շարունակողն ու արդիւնաւորողն եղած է ստուգապէս Յովհաննէս Հերմոնեցին։ Մէկտեղ եկող Վասպուրականցիներն ալ ետ չեն դարձած, անշուշտ կը վախնային Դաւիթ Աղթամարցիին սահմաններուն մէջ երեւալ, որ հաւասարապէս զայրացած էր Տաթևացիին գործակիցներուն դէմ, և մանաւանդ իր վիճակայիններուն դէմ, որ իրեն գահընկեցութեան աշխատած էին, թէպէտ նպատակնին յաջողցուցած չըլլան։ Յովհաննէս Մեծոփեցին, որ Վասպուրականէ հեռացողներուն գլխաւորն էր, առիթէն օգտուելով սկսաւ շրջան ընել Սիւնեաց և Այրարատի վանքերը, բայց երբ կը գտնուէր Այրեվանքը, երկիրդ օգտանել տափաստանաց Երասխայ (ՄԵԾ. 61), հիւանդացաւ մեծպահոց միջոցին, մօտ ի Զատկի յարութեան տօնն, և Ցինանց մէջ, ի նոյն օրն որ աւէ Անուկէրճն Առաքեալ, ի Յարութեան օրն, այսինքն կիրակի օր մը՝ հանեալ փոխեցան նորա, փնջոց առ Քրիստոս (ՄԵԾ. 61)։ Անուկէրճն Առաքեալ յարութեան շաբական, ունինք միայն Անուկէրճն Առաքեալ և ամենայնի հարցը (ՇԱՐ. 335), կ'երգուի Ցինանց չորրորդ կամ Կարմիր կիրակէին (ՏՕՆ. 112), որ 1411'ին կ'իյնար մայիս 3'ին, և այս պէտք է ընդունուի իբրև Յովհաննէս Մեծոփեցիի մահուան թուականը։ Նոյն չորս Վասպուրականցի վարդապետները, որոնք Տաթևացիին թաղման

գտնուած էին (§ 1401), և իրենց հետ եղող-ները՝ հայրենակից և հայրապատիւ ընկերն ալ տարին Թաղեցին Հաւուցթառի վանքը, Յովսէփ Նոր վկային և Եղիա վարդապետին գերեզմանին քովը (ՄԵԾ. 61)։ Յովսէփ Նոր վկայն Յովսէփ Դըւնեցին է, որուն վրայ խօսած ենք իր կարգին (§ 959), իսկ Եղիա վարդապետ՝ պէտք է իմացուի Հաւուցթառի վանահայրը, որ ներկայ եղած էր Լօռիի գումարումին (§ 1084), և որուն չինարար ու նշանաւոր անձ մը եղած ըլլալը կը քաղուի այդ պատուաբեր յիշատակութենէն։ Մեծոփեցի պատմիչը՝ իրեններուն փառաւորութիւնները փայլեցնելու հետամուտ, կը վկայէ թէ Յովհաննէսի գերեզմանին վրայ Յովհաննէս Եպիսկոպոսին յիշատակ է ամէն Նորա (ՄԵԾ. 61), սակայն Յովհաննէսի յիշատակը Յայսմաւուրքի անցած չգտնուիր։ Որոշ պատմութիւններ կը պակսին Տաթեւացիին մահուան յաջորդող միջոցին, և Վասպուրականէ փախած Վասպուրականցի վարդապետներուն վրայ, որոնք կ'երեւի թէ պահ մը ապահովութիւն չզգացին իրենց տեղը դառնալ, և միայն Դաւիթի հետ հաշտուելէ կամ անոր մեռնելէ ետքը համարձակեցան դառնալ։ Այս առթիւ Թովմաս Մեծոփեցին ալ, ժամանակակից պատմիչը, ձեռք անցուց Մեծոփայ վանքին առաջնորդութիւնը, իբր Յովհաննէսի յաջորդ։

**1405**. Յակոբ կաթողիկոս բախտին յաջող բերմամբ պատուաւոր և յաջող գործի մը մէջ գտնուած էր, Սղթամարի կապանքը լուծելու կոչուելով (§ 1399), սակայն արդիւնքը տեսնելու մխիթարութիւնը չկրցաւ ունենալ, զի ոչ միայն գործը առջեւ չքալեց (§ 1400), այլ և իր ալ կեանքին վախճանը շուտով վրայ եկաւ։ Իբրեւ ժամանակակից աղբիւր Մեծոփեցին ունինք, որ վեց կաթողիկոսներուն ետեւէ ետեւ դեղակուր սպանուած ըլլալը գրելով (ԿՈՍ. 55), Յակոբն ալ այդ չարքին խառնած կ'ըլլայ. բայց Զամչեան ալ, որ ամէնուն վրայ այդ տեսակ մահը չտարածեր, Յակոբի համար կ'ընդունի ի մեծամեծաց հայրապետանոցին դեղ մահու արբուցեալ սպանուած ըլլալը (ՉԱՄ. Գ. 457)։ Յակոբին մինչեւ 1409 ապրած ըլլալը, Վասպուրականցոց գիրէն գատ (§ 1399), Մեծոփի արձանագրութիւնն ալ կը վկայէ (ՓԻՐ. 30), և սովորութիւն եղած է անոր կեանքը երկարաձգել գոնէ մինչեւ 1411, Տաթեւացիին մահուընէ ետքը (ՉԱՄ. Գ. 457), և մենք ալ փաստ մը չենք գտներ անկէ շեղելու։ Միայն թէ ոչ եւս 2 տարի միայն, ինչպէս սովորաբար կը տրուի (ՍԱՄ. 172), այլ գոնէ 7 տարի պէտք է տանք անոր կաթողիկոսութեան, ինչպէս բացատրեցինք մեր ժամանակագրական բաղդատութեանց մէջ (§ 1388)։ Անծանօթ կը մնան մեզի ըսպանութեան պարագաները, թէ ինչ առիթներ գրգռեցին Սսոյ միաբանները կաթողիկոսնին թունաւորելու, և թէ սովորական նախանձէն, կամ Յակոբի բռնաւոր ընթացքէն ազատելէ զատ մասնաւոր պարագայ մը եկաւ միաբանները վերջնական որոշման հասցնելու։ Նկատելով թէ ով եղաւ Յակոբի սպանութենէն օգուտ քաղողը, և չահերու ուսումնասիրութենէն մեկնելով գաղտնի եղելութեանց լուծումը, կը համարձակինք ըսել, թէ նոյն ինքն Յակոբի յաջորդը եղած կ'ըլլայ դաւաճան դեղատուութեան գլուխը կամ հեղինակը, և Յակոբ իւր անձամբ վճարած կ'ըլլայ ինչ որ ինքն ալ իւր նախորդին՝ Կարապետ կաթողիկոսին ըրած էր (§ 1388)։ Յակոբ Գ Սսեցի աննշանակ կը մնայ, ինչպէս աննշանակ ալ աթոռ բարձրացած էր, քայլ մը եւս առջեւ տանելով հայրապետական աթոռին քայքայումը, ընդարձակելով գեղծմանց ասպարէզը, և իւր բռնական ընթացքով գրգռելով ապերախտ վրէժխնդրութիւնները։

**1406**. Քաղաքական պատահարները աչքէ վրիպեցուցինք, ազգային և եկեղեցական եղելութեանց հետ ներքին կապ չունենալնուն։ Լէնկթիմուր 1402'ին Օսմանեանց սուլտան Պայազիտ Եըլտըրըմի վրայ տարած յաղթանակէն ետքը (§ 1385), եկն նախ ի վերայ քաղաքին Վանայ պաշարել և կործանել զնա։ Անհնարին եղան հասուցած չարիքը և ահեղ կոտորածը, առեալ զան զվարդապետն հոգւոր որդի գերի վարեցին (ՄԵԾ. 66), մեռն և բազմք, տաղանդ և ծաղկանց, որոնց մէջ տկարներուն համար առեալ ջախջախէին զգլուխս, զի մի կենդանի

Ռամայեն, ինչպէս կը վկայէ Մեծոփեցին, թէ փեսայ աչօք մերոյ և լուսոյ, բայց ինքնեւ ող-կորեայ (ՄԵԾ· 67)։ Լէնկթիմուրի այդ արշաւանքը վերջինն եղաւ դէպ Արեւմուտք. միւս տարին 1404'ին պատրաստուեցաւ Չինաստան արշաւել, բայց չկրցաւ գլուխ հանել, գի ճանապան մեռաւ, Խոքանտ գաւառի Օթրար աւանը,1405 փետրուար 18'ին, 71 տարեկան։ Լէնկթիմուր անգութ բռնաւորի տիպար մըն է արտաքնոց համար, իսկ իրեններէն աշխարհաշէն, ուսումնասէր, օրէնսդիր և արդարասէր վեհապետի համբաւը կը վայելէ (ՏԻԻ· 357)։ Իրեն յաջորդեց որդին Շահռուհ, զոր ոմանք կը նոյնացնեն Միրանշահի հետ (ՃՆՏ· 186), որ Պարսկաստանի իշխանապետ թողուած էր, և սա ալ այն տեղ իրեն յաջորդ նշանակեց Խօմէր որդին։ Անցողակի յիշենք թէ շատ չփոթ են Լէնկթիմուրի որդիներուն և թոռներուն անձերն ու անունները, որ միահամուռ 40'ը կ'անցնին։ Սոյն Խօմէրի համար կ'ըսուի․ թէ տէրնոյց թագաւորեամբ յանհատա-տութեան Բուռթէլ Օրբելեանը և անոր եղբայր Սմբատը, Տաթեւացիին պաշտպանը (§ 1367), Տարսայիճ Եղեգեաց, Ազիտան Ազգից, և Սարդաթմիշ Մակուայ իշխանները, որք էին սրբեա ըստ մի ողկուզոց Թագաւորեալ էին, և որ յետոյ զղջացան և եղին ճշմարիտ հաւատացեալք (ՄԵԾ· 67)։ Գարա-Եուսուֆի Գարագօյունլուն, որ իւր երկրէն փախած էր (§ 1384), բայց ոչ է խաչափայտն քանզի ներքինս գրուած, ինչպէս ոմանք կարծեցին (ՍԱՄ· 173), այլ ող կորաց ի սուր յաշխարհս մեր մինչև ց855 (ՄԵԾ· 49), որ է 1406, այսինքն է Լէնկթիմուրի մահուան յաջորդող տարին, երբ վերացաւ Թամուրն այն Աստրպատական մասէ յաղթական, և որոշ խաղաղութիւն վերին կողմանց աշխարհիս Հայոց։ Իսկ յերկրորդ ամին, այսինքն է 1407'ին, նոր պատերազմ բացուեցաւ Լէնկթիմուրի թոռին Ապուպէքիրի և Յուսուֆի միջեւ, և նորէն Յուսուփ զօրացաւ, Երզնկան, Մէրդինն ու Արղնին իրեն հպատակեցուց, Ամիդի վրայ ալ քալեց՝ որ Աքքօյունլուներուն կեդրոնն էր, բայց հպատակութիւննին ընդունելով հաշտութեամբ վերջացուց։ Աքքօյունլուներուն վեհապետն էր Օսման կամ Օթման, զոր յոյժ օգնող ազգին Հայոց կ'անուանէ Մեծոփեցին, առանց գործ մը յիշելու (ՄԵԾ· 72)։ Պաղտատի ամիրայ Ահմէտ, Յուսուփի բացակայութենէն օգտուելով Թաւրէզը գրաւեց, բայց Յուսուփ ետ դարձաւ, ոչ միայն Թաւրէզը, այլեւ Պաղտատն ալ առաւ, և Ահմէտը սպաննելով Սքանդար կամ Իսքէնտէր որդին այն տեղ նստեցուց, և ինքն դարձաւ հանգստանալ Բագրեւանդի Վաղարշակերտ քաղաքը, որ է այժմեան Ալաշկերտը։ Պահ մը պատերազմի աղմուկը դադրեցաւ, և եղեւ ի նոյն ժամանակս խաղաղութիւն խնամօքն Աստուծոյ, և մարդիկ ի շէնս բնակէին, թէպէտ հարկապահանջութիւն բազում էր, սակայն խաղաղութիւն առանց խռովութեան էր (ՄԵԾ· 73)։ Այս միջոցը կը պատասխանէ Տաթեւացիին Վասպուրական գալուն, և Աղթամարի խնդիրը յուզելուն, և Դաւիթ Աղթամարցիին վերստին զօրանալուն, որուն պաշտպան կանգնած էր Գարաքօյունլուն Յուսուփ, միշտ կասկածոտ օտարներու միջամտութեանց մասին։ Մեծոփեցիին գրելը թէ ծաղկեալ էին եկեղեցիք, պէտք է պատշաճեցնենք Տաթեւացիին ձեռօք եղած բարեկարգութեանց։ Դաւիթ ալ հեռու չէր այդ գործունէութենէ, որչափ ալ Տաթեւացիին դէմ զինուած ըլլար աթոռական խնդիրին պատճառով։ Պատեհէն օգտուելով ուրացեալ Հայ իշխաններ, որոնք վերեւ յիշուեցան, եկին ի հաւատս, և մինչև իսկ Տաճիկներէն գրաւուած վանքեր ու եկեղեցիներ՝ ետ տրուեցան (ՄԵԾ· 73)։

**ԻՍԱՀԱԿ ՅՈՒՍՈՒՓ**

**1407**. Այդ միջոցին էր որ հռչակ կը գտնէին Յուսուփ Իսահակ պարսիկին քաջագործութիւնները։ Բնիկ Թաւրէզցի էր նա, իսլամ կրօնքին մէջ ծնած և սնած, ու մերթ և յանդուգն ընթացքովը, հալածիչ մը եղած էր քրիստոնէից դէմ, և ամէն տեսակ բռնութեանց ձեռներէց էր, ոչ տալով բնաւ դադարումն կատարութեան չարեացն (ՆՈՐ· 208)։ Տակաւին պատանի մըն էր շուրջ 1377'ին, երբ կը հաւաքէր զգէշ ոսկերս շանց, և կը ձգէր ի հորս քրիստոնէից (ՄԵԾ· 73)։ Կ'երեւի թէ այդ գործերը պահ մը իւր սիրտն ալ վրդովեցին, որ գիշեր մը ընտանիք նորա, մայրն և եղբարք, անոր ահագին ձայնեն ձայնէն զարհուրեալ սաստիկ ռամկացն, և զարթուցանել ոչ կա-

չէն մինչեւ երեք տիւ և երեք գիշեր։ Լսուած ձայնն էր, Աստուած էմ վկայ էր, խոստովանիմ և հաւատամ, և ուրիշ համիմատ բացատրութիւններ (ՄԽԾ. 75)։ Երիտասարդը վերջապէս ուշաբերելով սկսաւ թմրութեան մէջ տեսածները պատմել, որք էին դժոխքի տանջանաց տեսարաններ. և զինքն անոնց մէջ նետելու սպառնալիքներ, և արքայութեան վայելքներու հեռապատկերներ, որոնցմէ տարատիպ դաւանութեան աղաղակներ կը կրկնէր։ Քունին մէջ խոստացածը, արթնութեան մէջ կատարելու հաստատուն միտքով, կը դիմէր Թաւրէզ գտնուող Սանտփանոս Լալուկ վարդապետին, և կը մկրտուէր, և այս առթիւ Եուսուֆ անունը փոխելով Խաչիկ կը կոչուէր, բայց սովորաբար երկու անուններովը մէկտեղ Յուսուփ Խաչիկ կը կոչուի (ՄԽԾ. 76)։ Առաջուընէ Տէրտէր չէլէբի Տաճկաց, վարդապետէն ալ աւագ չէլէբի Հայոց, և որովհետեւ էր յոյժ ոսկեգործ և դեղող, ճարտար քարոզիչ մը դարձաւ (ՆՈՐ.209), Իոհանեսոյ գորոջ վարդապետ կոչումն ալ ստանալու չափ (ՆՈՐ. 217), թէպէտ բնաւ եկեղեցական աստիճան չունէր։ Նոյն նախանձայուզութեամբ որով քրիստոնէութեան հալածիչն ու անարգողն էր, քարոզիչն ու պաշտպանը դարձաւ Առաքելոյն Պօղոսի նման (ՆՈՐ. 209), սկսելով նոյն իսկ իւր ծննդավայրէն, Թաւրէզ քաղաքէն, և հետզհետէ շրջելով ի Քրդստան, ի Գուրջստան, ի Հայաստան, ի Վրաստան, յԱսորեստան, ի Բաղդատ և յայլ բազում տեղիս. և իւր վարդապետութեամբ ամենայն զբազումս ի հաւատս Քրիստոսի, և այսպէս աշխատելով զամս քառասուն, մինչեւ որ ծերացաւ (ՆՈՐ. 213)։ Բարոզութեանց հետ համընթաց էին հալածանքներն ալ զօրս կրեց, խստագոյն չարչարանքներու ալ ենթարկուելով, բայց թէ այսպէս կամ թէ՝ այնպէս վերջնական վտանգներէ ազատուելով։ Թաւրիզի մէջ ուղտի վրայ ձաղանքի ենթարկելէ ետքը, այնչափ գանակոծեցին՝ որ հազիւ 40 օր նոր քերթուած մորթի մէջ ծրարելով տառապեալ հանէն ընթանէին։ Սուլտանիա քաղաքը, Սմրղանդ մայրաքաղաքը, Պաղտատի մէջ ալ նմանօրինակ նեղութիւններ կրեց (ՄԽԾ. 76)։ Լայիլանի մէջ կրակով փորձեցին, Նախիջեւան՝ պարիսպէն վար ձգեցին, Մարաղա՝ գլխիվայր կախեցին (ՆՈՐ. 212)։ Պահ մը Մեծոփայ վանքն ալ քաշուեցաւ և և վեց ամիս հոն մնաց։ Մեծոփեցին ելն ամ մեղ կ'ըսէ, և տարին ցոյց չտար, բայց հաւանաբար 1409'ին, Տաթեւացիին այնտեղ եղած տարիին պէտք է պատշաճեցնել։ Մեծոփէ գնաց Արճէշ, ուր մնչև ի մէջն թաղելով քարկոծեցին, և բազուկը խորտակելով ազատ թողուցին, ուսկից ելն դարձեալ ամ մեղ կը գրէ Մեծոփեցին (ՄԽԾ. 76)։ Բայց այս թուականէն ետքն ալ Յուսուփ-Խաչիկ շարունակած է քարոզչական շրջագայութիւնները մինչեւ իւր նահատակութիւնը, որ տեղի ունեցած է Շամախի քաղաքը, 1417 ապրիլ 18'ին, հաստ բիրով գլուխը պայթեցնելով, այնպէս որ ուղէղն արտաքս ելաւ ի քթէն (ՆՈՐ. 216)։

# Տ. ԳՐԻԳՈՐ Ը. ԽԱՆՁՈՂԱՏ

ՊԱՇՏՕՆ ԵՒ ԺԱՄԱՆԱԿ

**1408.** Ըսինք արդէն թէ Յակոբի սպանութեան թելադրող կամ գործադրող պէտք է նկատել այն անձը, որ այդ ոճիրէն կ'օգտուէր (§ 1405)։ Ասով ոչ միայն մատնանիշ ըրած կ'ըլլանք Գրիգոր Ը կաթողիկոսը, այլ և բացատրած կ'ըլլանք անոր կաթողիկոսութեան համառօտ կերպը, այսինքն է սպանութեամբ աթոռը դատարկացնել, և կաշառքով յաջորդութիւնը ձեռք անցընել։ Այդ կերպը Զամչեան ալ կը շեշտէ (ԶԱՄ. Գ. 457), հարկաւ աղբիւրէ մը քաղելով։ Ասկէ կը հետեւի թէ Գրիգոր աթոռին աղդեցիկ եպիսկոպոսներէն էր, և արտաքին միջոցներով ճոխացած, բայց աւելի բան մը գիտցած չենք ըլլար իւր նախընթացին վրայ։ Ծագումն ու ծնրն դաւայրն ալ չեն յիշուած յիշատակարաններ-

րու մէջ, այլ իր կենդանութեան ժամանակէն գրուած է, թէ ճոխտամ խանջողոտ կոչէ (ՓԻՐ. 56), առանց պատճառը կամ բացատրութիւնը տալու։ Խանձի կամ կրակի իմաստ մը կայ բառին մէջ, այլ չենք գիտեր թէ ներգործաբար խանձող ու այրող պիտի իմանանք, թէ ոչ իր վատ գործերով խանձոտած ու սեւցած մէկ մը։ Ասոր հետ մէկտեղ անհնար չէ որ արտաքին կամ պատահական պարագայէ մը յառաջ եկած մականուն ըլլայ։ Միայն ստոյգ է, որ Սիս նստող վերջին կաթողիկոսներուն մէջ ամէնէն աւելի վատթարը այդ Գրիգորը կը նկատուի, Գրիգոր նուիրական անունին անարգանք դառնալու չափ։ Աթոռի տիրանալուն թուականը 1411'ին պահելով (§ 1405), տեւողութիւնը խնդրոյ նիւթ է։ Ժամանակագիր մը ամ եօթն կը դնէ (ՍԱՄ. 172), որով կը հասնինք 1418'ին, ինչ որ կը համապատասխանէ Դավրիժեցիին ընդունած թուականին, թէ Հայոց 867 թուին, որ է 1418, մեռաւ տէր Գրիգորն, որ ճոխտամ խանջողոտ կոչէ, աթոռակեցն (ԴԱՎ. 336)։ Թէեւ միեւնոյն 1418 թուին Գրիգոր կաթողիկոս կը յիշուի յիշատակարաններու մէջ (ՓԻՐ. 56), բայց այդ բնաւ նոյն տարին քաշուելուն չհակառակիր։ Սակայն երկու տարի ետքն ալ, 1420'ին, ի կաթողիկոսութեան Հայկազեան սեռի տեառն Գրիգորի գրող յիշատակարան ալ կայ (ՓԻՐ. 62), որ կը թելադրէ 1418'էն ետքը թողուլ Գրիգորի կաթողիկոսութեան վերջը։ Միւս կողմէն բոլորովին անոր հակառակ կը ցուցնեն ուրիշ յիշատակարաններ, որոնք ոչ միայն 1418'ին (ՓԻՐ. 57), այլ և 1416'ին ի հայրապետութեան տեառն Պօղոսի կը գրեն (ՓԻՐ. 48)։ Ընդհանուր կանոն է, այդպիսի տարաձայնութեանց մէջ միակ բացատրութիւնները նկատի չառնել, և տառերու փոխանակուելուն կամ գրողներու սխալելուն վերագրել տարբերութիւնները։ Այդ տեսակէտէն նայելով, 1416'ին Պօղոսի կաթողիկոսութիւնը նշանակուելուն մէջ՝ հայկական թուականին Ծ և Է թուատառերու չփոթը դիւրաւ կ'ենթադրուի, և ՊԿԾ թուատառը ՊԿԷ կարդալով 1418 թուականը կ'արդարանայ։ Իսկ Գրիգորի մինչեւ 1420 կաթողիկոս յիշուիլը, կրնայ հեռաւոր Հիզանցի գրողին Կիլիկիոյ գործերէն անտեղեկութիւն չունենալուն վերագրուիլ։ Այդ դիտողութիւններու վրայ հիմնուելով, և Գրիգորի կաթողիկոսութեան 1418'ին վերջանալուն մասին՝ զանազան աղբիւրներէ համաձայն վկայութիւնները տեսնելով, մենք ալ կը համաձայնինք պահել նոյն թուականը, և Գրիգորի եօթնամեայ պաշտօնավարութեան տեւողութիւնը։

**1409.** Որչափ ալ եօթնամեայ միջոցը բաւական գործունէութեան ժամանակ ըլլայ, սակայն Խանձողատի կողմէ որեւէ գործ մը կամ արդիւնք մը կատարուած ըլլալու յիշատակ չունինք,

**ԿԻԼԻԿԵՑԻՈՑ ԶԵՂԾՈՒՄՆԵՐԸ**

և այն քիչը որ կը գտնենք բոլորովին իրեն աննպաստ է։ Կիլիկիոյ աթոռին աննախանձելի վիճակը չառնող էր որ Արեւելեայց մտահոգութեան և մտադրութեան առարկայ եղած էր, և Տաթեւացիին նախաձեռնութեամբ Աղթամարի խնդիրին յուզուելուն չարժառիթն ալ այս էր եղած (§ 1398)։ Դաւիթի զահընկէցութեամբ գործին լուծում գտնելու միտքը, շատ գործնական չէր, և արդիւնաւոր ալ չեղաւ։ Ընդհակառակն Դաւիթի զայրոյթը և անձնապաշտպանութիւնը գրգռեց, և անով մեծ նպատակն ալ ձախողեցաւ, ու Տաթեւացիին վերահաս մահուամբ խնդիրն ալ մարեցաւ, թէպէտ չի թաղուեցաւ։ Թէ՛ բուն Սիւնեցիք, և թէ Տաթեւ գտնուող Վասպուրականցիք հետամուտ էին պէտք եղածը գործել, և Կիլիկիոյ մէջ գործուած անկարգութիւններուն վերջ մը տալով, հայրապետական աթոռին շուքն ու ազդեցութիւնը վերանորոգել, որ Սսոյ անձուկ շրջանին մէջ փակուած, սակաւաթիւ կեղծ ու զեղծ եկեղեցականներու ձեռքը ինկած, ընդհանուր ազգին շփումներէն և ազդեցութենէն դուրս մնացած, և անձեւ ու անկերպարան տիրապետութեան մը նպատակ դարձած, ամէն տեսակ անկարգութեանց համարձակ դուռ էր բացած։ Մեծոփեցին իբրեւ անաչառ դատախազ մը միառմի թուած է այդ անտեղութիւնները։ 1. Մնացեալ էր խմոր աղթարմայութեան Կոստանդեայ Կեսարացւոյ և Գրիգորի Անաւարզեցւոյ։ 2. Զանկեալ ի կարգէ փարչութեամբ վաշխողութեան եղծախօսութեան՝ ի յատեան ատենելական կոչէին։ 3. Գայթակղութեամբ ըմբռնեալ է

հաղորդոյն Քրիստոսի ի բաց հանէին (ԿՈՍ. 55)։ 4. Անառակութեամբ և արբեցողութեամբ և զեղծ վարուք շրջէին։ 5. Հասարակ յեկեղեցի յերթալ չհոգային ի բաց թողին։ 6. Արծաթով տային զշնորհս Հոգւոյն Սրբոյ (ԿՈՍ. 56)։ 7. Ի վերայ միոյ վիճակի երեք և չորս եպիսկոպոսս ձեռնադրէին։ 8. Զանազգոյս և զանկարգս ձեռնադրէին։ 9. Անիծիւք նզովից և բանադրութեամբ կապանաց զաշխարհս մեր լցին (ԿՈՍ. 57)։ 10. Թողին զօրէնս Քրիստոսի, և թողին զկանոնեալն ի Լուսաւորչէն։ 11. Յաջ Լուսաւորչին երդնուին, որ ոչ զԼուսաւորիչն ճանաչէին և ոչ զաջ Լուսաւորչին գիտէին (ԿՈՍ. 58)։ *Այդ տխուր նկարագիրը եւս առաւել ընդարձակուած էր Խանձողատին օրով, այնպէս որ Արեւելեայք միջամտելու պէտքը զգացին, և կերպին վրայ խորհրդակցութիւններ ունեցան։ Անոնց մանրամասնութիւնները մեզի հասած չեն, միայն թէ ընդհանուր համամտութիւն մը կը տեսնանք Արեւելեայց մէջ։ Սիւնեցիք և Այրարատցիք, Արճիշեցիք և Աղթամարցիք ձեռք ձեռքի տուած համաձայն գործունէութեան կը ձեռնարկեն, որուն հիմնական կէտերը կ'ըլլան, աթոռը Կիլիկիայէ ետ դարձնել, Աղթամարի աթոռն ալ դադրեցընել, և հայրապետական աթոռը Լուսաւորչահիմն Էջմիածնի մէջ նորոգել։ Աղթամարի կաթողիկոսն ալ այդ ծրագիրին համակերպած կը տեսնուի, ընդհանուր հայրապետական աթոռին ժառանգութիւնը իրեն յանձնուելուն վստահանալով։ Հետեւաբար խնդիրին լուծումը այլեւս Դաւիթի կողմէն ալ դժուարութեան չէր հանդիպեր։ Այդ կերպով իրապէս և օրինաւորապէս կատարուած պիտի ըլլար, ինչ որ յետագայք Թիւրիմացութեամբ ըրին, Դաւիթ Աղթամարցին հայրապետաց շարքն անցընելով* (§ 1375)։

**1410**. *Արեւելեայք կ'որոշեն, իբրեւ մեծ ձեռնարկին նախաքայլ, պատուիրակ մը ղրկել Սիս, քննիչի և այցելուի և բարեկարգիչի պաշտօնով, որ տեղւոյն վրայ կացութիւնը ուսումնասիրէ և գործը պատրաստէ, և այդ պաշտօնը կը յանձնուի Երուսաղէմի պատրիարք Պօղոս արքեպիսկոպոսին, որ Սարգիս պատրիարքի յաջորդած էր* (§ 1393)։ *Պօղոս ծնած էր Այրարատայ Գառնի քաղաքը, ինչպէս յայտնապէս կը վկայէ Դաւիթ Գառնեցի յիշատակագիրը, Հաւուցթառի վանքին համար ընդօրինակուած երկու մաշտոցներու մէջ* (ԹՈՐ. Ա. 233. Բ. 339)։ *Ասկէ կը հետեւի թէ Արեւելեաններուն խումբէն էր Պօղոս և Տաթեւի աշակերտութենէն, և Երուսաղէմի միաբանելով մինչեւ պատրիարքութիւն բարձրացած։ Հետեւաբար Պօղոս, թէ՛ իր ուղղութեամբ և թէ տեղական պարագաներու հմուտ և փորձառու ըլլալով՝ յարմարագոյն անձն էր դիտուած պաշտօնը կատարելու։ Իրեն պատրիարքութեան սկիզբը թէպէտ* 1417'*ին կը կարծուէր* (ԲԱՌ. 47), *սակայն մուրհակներու վկայութեամբ* 1413'*ին արդէն պատրիարք կը նշանակուի* (ԱՍՏ. Ա. 219), *և Երուսաղէմի համար ալ օգտակար ըրած էր իր պաշտօնը* (§ 1393)։ *Կիլիկիա՛ անցնելուն թուականն ալ ճշդուած չէ, յիշատակարան մը, պատրիարքութենէն* յետ սուղ ինչ աւուրց *կը գրէ* (ԱՍՏ. Ա. 220), *ուրիշ տեղ միայն* ամս երկուս *պատրիարքութիւն վարած կ'ըսուի* (ԲԱՌ. 47), *ուրիշ մըն ալ մինչեւ* 1418 *կը յետաձգէ Սիս երթալը* (ԶԱՄ. Գ. 458)։ *Տարբերութիւնները բաղդատելէ ետքը հաւանական կը գտնենք* 1417'*ին դնել Պօղոսի Սիս երթալը, Խանձողատին անկումէն տարի մը առաջ։ Այս տեղ ալ նորէն մեզի կը պակսին պատմական յիշատակներ, սակայն գործին՝ Խանձողատի գահընկէցութեամբ և աքսորով վերջանալը, յայտնապէս կը ցուցնէ, թէ Պօղոս կրցած է մէջ տեղ հանել անոր զեղծումները, և յաջողած է անկէ բաժնել ու հեռացնել իր գործակիցները ու չահակիցները, եդանակ ալ գտած է տեղւոյն ամիրային իրեն գրաւել։ Քննչութեան արդիւնքը այն եղաւ, որ Պօղոս՝ զեղծարար Գրիգորը տապալեց, ինքն զօրացաւ,* և նկատ արար զայն ի ձեռն այլազգի Ամիրային Կիլիկեցւոց (ԶԱՄ. Գ. 457)։ *Գրիգորի գահընկէցութեան հետ յիշուած է եւս թէ* աթոռեցին (ԴԱՎ. 336), *ինչ որ քաղաքական իշխանութեան գործակցութիւնը կը ցուցնէ, առանց իմացնելու թէ ինչպէս և ուր։ Գուցէ բանտարկութիւն ալ յաջորդեց աթոռէն վտարումին։ Աւելի ցաւալի է ինչ որ* ասէ ի փառասիրութենէ ինչ, թէ նաև հոգւով ողանին չէ (ԶԱՄ. Գ. 457)։ *Այդ բա-*

ցատրութիւնը մերիններուն գրիչին ներքեւ ուրացութեան իմաստն ունի, և անմիջապէս միտք կը բերէ, թէ ամիրային ձեռքէն և անոր բռնութիւններէն և բռնադատութիւններէն ազատելու համար հաւատափոխութեան յանձնառու եղած ըլլայ, ինչ որ հայրապետական աթոռին պատուոյն համար՝ չէինք ուզեր, որ ստոյգ ըլլար։ Բայց թէ անկէ ետքը ինչ ըրաւ, ինչչափ ապրեցաւ, և ինչ կացութեան մէջ մեռաւ, մթութեան մէջ կը մնան մեզի համար։

1411. Դիւրին է ընդունիլ գործին, այսինքն կաթողիկոսներուն գահընկէցութեան օրինաւորութիւնը, որչափ

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

ալ թերի ըլլան, պատմական յիշատակները, որոնք բաւական են Խանձողատին իսկապէս անարժան մը ըլլալը հաւատալ։ Բայց ամէն պարագայի մէջ անհրաժեշտ կը նկատենք, որ գահընկէցութիւնը քննութեամբ և վճռով, կանոնական օրէնքով և ժողովական հեղինակութեամբ պէտք է տեղի ունենայ, որպէսզի կաթողիկոսը օրինաւորապէս գահընկէց սեպուի, և տեղը անցնողը հակաթոռ մը չնկատուի։ Ներկայ պարագայիս մէջ պահանջուած պայմանները, և ***** ըսելն ալ աւելի բռնական քան թէ օրինական գործի մը երեւոյթը կու տայ, իսկ մենք, հակառակ որոշ յիշատակներ չգտնելնուս, օրինական գործողութեան մը դիմաց գտնուիլ կը կարծենք։ Եւ այս մեզի իբր փաստ կը ծառայեն, Պօղոսի իբրեւ քննիչ ղրկուիլը, և անոր ուղղամիտ և ուղղադատ անձ մը ըլլալը, որ հարկաւ կատարեց այնչափ ինչ, որչափ որ հնար էր ընել Սիսի մէջ տիրող անկարգութեանց մէջ։ Պօղոս կրցած է, ինչպէս յիշեցինք, Խանձողատին գեղծումները երեւան հանել, և Աթոռին մէջ գտնուող եպիսկոպոսներու և վարդապետներու և Սիսի իշխանաւորներու գործակցութեամբ որոշում տալ և գործադրել. արդէն Արեւելեայց հաւանութիւնը կանխաւ ապահովուած էր, իրեն տրուած յանձնարարական պաշտօնով։ Ամէն առթի մէջ Խանձողատին անձը՝ տխուր դէմք մը, և իր վախճանը՝ դժպհի աղէտ մը ըլլալէ չդադրիր, ինչ որ ինքն իրեն կը բաւէ Սսոյ աթոռին վերջին ժամանակներուն ցաւալի կացութիւնը պատկերացնել, և աթոռի փոխադրութեան կարեւոր ձեռնարկին անհրաժեշտ պէտք մը դարձած ըլլալը հաստատել։

1412. Քաղաքական տեսակէտէն ալ ալեկոծ միջոց մըն է Խանձողատի ժամանակը։ Ախլցխա քաղաքի

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱՑՈՒԹԻՒՆ**

մէջ, որ Վրաց թագաւորութեան ներքեւ էր, հետզհետէ շատցած էին Պարսիկներ, զի յետոյ իշխանն՝ որդի Արտաղըն Իլխանէ, Բարձրացուցեալ էր զնոսա, մինչեւ իսկ քրիստոնէից նախանձը շարժել։ Վրացի և Հայ երիտասարդաց խումբ մը օր մը խողի ոսկրներ կը նետէ անոնց մզկիթը, որուն վրայ Պարսիկներ վրէժխնդիր ըլլալու համար Գարա-Եուսուֆի հրաւէր կ՚ընեն և քաղաքը անոր կը մատնեն, և կոտորել և անողորմ կոտորածի կ՚ենթարկեն։ Ոչ միայն էթէրէս զգեստն անձեղ զենուլն ի վեր տան զհամար և զնէս մեաց մարդկան, այլ և գերէ տառեալ զէն և զոտս, զհարկաւոր և զալխարհական (ՄԵԾ. 77), ծանր փրկանքներով ազատութիւն կու տային, որով կամաւորապէս կը թալնուէին քրիստոնեաները, հանայի զզարդարանս եկեղեցեաց հողաթափէին, և ամ ոսկեղէն և ամփոփարէին հայր՝ տայէն և գնէին։ Եուսուֆի կատարած Ախլցխայի կոտորածին թուականն նշանակուած է 1416 տարին, ուսկից ետքը դէպ Սսորիք ալ կ՚արշաւէր, բայց կ՚երթար խորոխ էթէրէ աղաւէ, և կը դառնար իբրեւ ջղջկան թէր (ՄԵԾ. 78)։ Օսման Աքքօյունլու ասիթէն օգտուեցաւ մինչեւ Երզնկա արշաւել 1417՚ին, երբ Լէնկթիմուրի որդին Շահռուհն ալ Թաւրէզի վրայ կը քալէր, այլ հեռանդացեալ ապականեցաւ Բանտարն այն Յուսուփ, որ է Գարագօյունլու Գարա-Եուսուֆը, իր բանակն ցրուեցաւ և մէկ մասը եկաւ ձմերել ի լեռն և ոստրեւէ աշխարհն Բոջբերանեաց (ՄԵԾ. 79)։ Իսկ Թաթարներ սփռուեցան ամէն կողմեր, մինչեւ որ Իսքէնտէր Պաղտատէ եկաւ (§ 1406), իր Գարագօյունլուները հաւաքեց, և եղբօրը Ասպահանին հետ նոր պատերազմի պատրաստուեցաւ, յաջող յարձակում մըն ալ կատարեց (ՄԵԾ. 80), բայց ոչ վերջնական յաղթութեամբ։ Շահռուհ նորէն խմբուեցաւ, և ուղտերն ու անասունները առջեւէն քշե-

լով, և կախարդական արհեստներու ալ դիմելով, կրցաւ Թիւրքմէնները չփոթել և ջարդել, և Իսքէնտէր ու Ասպահան մինչև Մերդին և Մուսուլ փախան 1421'ին (ՄԵԾ. 81), բայց Շահռուհի ետ դառնալուն վրայ, կրցաւ Իսքէնտէր նորէն գալ և Թաւրէզի մէջ թագաւորել 1422'ին (ՄԵԾ. 83)։ Տարբեր չէր Փոքր-Ասիոյ ալ կացութիւնը, ուր Եգիպտացիք, Գարամանցիք և Օսմանցիք իրարու հետ կը մաքառէին աշխարհակալութիւննին ընդարձակել։ Կիլիկիա էր երեքին սահմանակցութեան երկիրը, և Տարսոն քաղաքը իբրև կարևոր կեդրոն, ձեռքէ ձեռք կ'անցնէր փոխադարձ յաղթութիւններով։ Մէհէմմէտ Չէլէպի, Օսմանեանց սուլտան Պայազիտ Եըլտըրըմի որդին ու յաջորդը (§ 1385), նախ առաւ Տարսոնը Ռամազանեաց ձեռքէն 1415'ին, բայց երեք տարիէն Եգիպտացիք գրաւեցին 1418'ին, միւս տարին 1419'ին Գարամանցիք զօրացան, սակայն նորէն եկան Եգիպտացիք 1420'ին և Գարամանցիները հալածեցին (ՍԻՍ. 560)։ Սիսի անունը չյիշուիր այդ պատերազմներուն մէջ, ուր կը շարունակէր Ռամազանեանց իշխանապետութիւնը (§1387) ամբողջ Խանձողատի ժամանակը, և յաջորդին ալ առաջին տարիները։

---

# Տ. ՊՕՂՈՍ Բ. ԳԱՌՆԵՑԻ

**ՊԱՇՏՕՆՆ ՈՒ ԶԵՌՆԱՐԿԸ**

**1413.** Պօղոս Գառնեցի, Երուսաղէմի պատրիարքը, զոր արդէն ծանօթացուցինք (§ 1410), ոչ միայն յաջողեցաւ իր պաշտօնը արդիւնաւորել Խանձողատ Գրիգորը հեռացնելով, և աթոռին վրայ ազդեցութիւն բանեցնելով, այլև կրցաւ պատարկացած աթոռը գրաւել և հայրապետ հռչակուիլ։ Մանրամասնեալ պատմութեան պակասութիւնը նորէն մեզ կը ստիպէ մերձեցումներով լրացնել եղելութեանց շարքը և մեկնել անոնց կապակցութիւնը։ Պատմական գաղտնիք կը մնայ, թէ ինչ կերպով յաջողեցաւ Պօղոս կաթողիկոսութիւնը ձեռք անցընել։ Ի պատիւ իրեն, որ ընդհանուր անկումին մէջ իբրև բարձր արժանաւորութիւն մը կը փայլի, չէինք ուզեր ըսել, թէ նոյն կերպերով զօրացած ըլլայ, որոնցմով Կարապետ Ա և Յակոբ Գ ձեռք անցուցած էին հայրապետական աթոռը։ Բայց եթէ ամբրան չահելու և միաբանները ստիպելու միջոցներէն ալ օգտուեցաւ, աննարակոյս պարտաւորուեցաւ գործածել այն կերպերը, որոնք միայն կը ծառայէին այն ատեն, իբրև ազդեցիկ միջոցներ, քանի որ ներքին անկարգ և անկերպարան վիճակը չէր ներեր հիմնուիլ օրինական կանոններու վրայ։ Պատմողներ կան, թէ ի մի եկեալ ոմանց յեպիսկոպոսաց և վարդապետաց եդին կաթողիկոս ինքեան զՊօղոս (ԶԱՄ.Գ.458), բայց աւելի ենթադրական կ'երևի քան պատմական, եթէ չբաւականանանք կանոնական ընտրութիւն ըսել՝ ընդհանուր հաւանութիւնն ու ընդունելութիւնը։ Ենթադրական կը կարծենք ուրիշներէն յառաջ բերուած ձևն ալ, թէ Խանձողատի անկումէն ետքը Սիսէ Երուսաղէմ եկեալ տարան զտէր Պօղոս և նստուցին յաթոռ կաթողիկոսութեան (ԱՍՏ.Ա.220), վասնզի Պօղոս արդէն Սիսի մէջ կը գտնուէր կաթողիկոսացած ատենը։ Պօղոսի կաթողիկոսութիւնը նշանաւոր հանգրուան մըն է Սսոյ աթոռին վերջին տարիներուն մէջ, որ կրնար մեծապէս օգտակար ըլլալ, եթէ տևողական վիճակ մը ստանար, և արկածալից վախճան չունենար։ Պօղոս բնիկ Արևելցի, արևելեան աշակերտութեամբ սնած, և Երուսաղէմի միաբանութեան հետեւող, անհնար էր որ ազգայնական ուղղութիւն ունենար, գի այլապէս ոչ Տաթևեան աշակերտութեան վստահութեան արժանացած, և ոչ Երուսաղէմի աթոռին պատրիարքութեան հասած կ'ըլլար։ Իր հայրապետութեան կոչուիլը, և Սսոյ աթոռին տիրանալը, ազգայնական ուղղութեան թէ ոչ վերջանալուն, գոնէ տկա-

բանալուն նշանն էր, և նշանաւոր արդիւնքներ ալ ունենալու յոյս կը ներշնչէր։ Չենք գիտեր թէ ինչ միտքով կը գրէ Չամչեան, թէ Պօղոս յետ Անորդէսւ կարգաւորեաց փոխ ի ղթոնան ըստ, որ իշխանացեալ էր յայժ է Բարեղործութենէ, է ապա տեղակալէլ անօրինէց ա-ծանց (ՉԱՄ.Գ.458)։ Մենք այդ խօսքերը կը մեկնենք աղթարմայական գերծումներուն դէմ թումբ մը ըլլալուն վրայ, բայց չենք վստահիր թէ նոյն իմաստով իմանան Չամչեան և իւր համամիտները, զի անոնց սիրելի է աղթարմայական ուղղութիւնը, որ զօրացած էր այդ դժպհի միջոցին, վերոյիշեալ անօրինաց աթոռին տիրանալուն պատճառով։

**1414**. Պօղոսի կաթողիկոսութեան թուականը 1418'ին նշանակեցինք արդէն, և մեկէ աւելի են յիշատակարաններ որ այն 1418 տարին կը նշանակեն է կաթողիկոսութեան մեր աթոռոյն տէր Պօղոսի (ՓԻՐ.56), կամ է հայրապետութեան տեառն Պօղոսի (ՓԻՐ.57), որ այս մասին երկբայութեան տեղի չիմար։ Իսկ տեւողութեան մասին մինչեւ 1428 տարին յիշատակարաններ կը գտնենք, որք է հայրապետութեան տեառն Պօղոսի գրուած են (ՓԻՐ.89)։ Իսկ Դավրիժեցին Պօղոսի յաջորդը կը դնէ 1430'ին (ԴԱՎ.336), և անոր վրայ հիմնուելով Պօղոսի կաթողիկոսութիւնը 12 տարի ընդունուած է ընդհանրապէս, նոյնպէս կը պահենք մենք ալ։ Հետեւաբար իբրեւ պարզ թիւրիմացութիւն կամ սխալանք պէտք է նկատել ժամանակագիրի մը նշանակած «ժ» երկուս տեւողութիւնը, և այն ալ 1412'էն 1414 (ՍԱՄ.173), որ ամէն յիշատակարաններու ալ անհամաձայն կուգայ։ Մնայուն արձանագրութիւն մըն ալ 1423 թուականով Սուրբ Աննա հայրապետանիստ վանքին ճակատը ծախիւք Պօղոս կաթողիկոսի շինուած ըլլալը կը վկայէ (ՍԻՍ.541)։ Պօղոս հոգիւ թէ կաթողիկոսական աթոռ բարձրացած, ձեռնարկեց զարդարել զվանս իւր, այսինքն է աթոռանիստը, ժամատեղօք և Բեղեցիկ կարգօք և սահմանիւք, զոր տեսեալ էր յԱրեւելս, է հայրենի ժառանգութեան իւր, որով յայտնապէս կը վկայուի Տաթեւեան աշակերտութենէ եղած, և Տաթեւեան ուղղութեան հետեւող ըլլալը։

| | |
|---|---|
| ՏԻՆՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԿԱՆՈՆՔ | |

Որպէսզի կարենար իւր գեղեցիկ նպատակը իրագործել, փութաց բերել յԱրեւելից թեր-բողոսածողէն Փիլիսոփայս և անյէնս ճգնաւորեացս, աբեղայս և կրօնաւորս, անշուշտ և վարդապետս։ Սիսի մէջ օրինաւոր հայրապետանոց իսկ չէր գտած, զի ոչ գոյր կան և տեղի հանգուցեան կաթողիկոսին, և ոչ ունէին կաթողիկոսքն տուն և սեղան հասարակոց, և այս պատճառով պարտաւորուեցաւ ի հիմանց կանգնել հայրապետանոց մը գեղեցկակամար յօրինուածովք, է տեղի ինչ դատաստանի և ժողովոյ, որ Սուրբ Աննա կոչի, զարդարեալ ամենայն շինուածով, վիմօք և աշտարակօք, որուն մէջ նաև սահմանեաց տուն հասարակաց ժողովան եղբարց (ՍԻՍ.541)։ Այդ համառօտ տեղեկութիւններն ալ կը բաւեն իմանալու թէ ինչ չափին քայքայման հասեր էր Սսոյ աթոռը Պօղոսի նախորդներուն ձեռքը, և թէ ինչ եղաւ Պօղոսի գործունէութեան հոգին Սիսի մէջ։ Որչափ ալ Սսոյ միաբան եպիսկոպոսներ և վարդապետներ յօժարեցան կամ հարկադրուեցան Պօղոսի կաթողիկոսութիւնը ընդունիլ, սակայն ի հարկէ հաշտ աչօք պիտի չտեսնէին, իրենց ուղղութեան հակառակ ընթացք մը, իրենց գերծումներուն դէմ բացուած պայքարը, և զիրենք կարգի ու կանոնի լուծին տակ մտցնելու ճիգերը, եւս առաւել պիտի չախորժէին Արեւելքէ եկող վարդապետներու և աբեղաներու՝ աթոռին տիրանալուն։ Միւս կողմէն Արեւելեայք, տեսնելով Պօղոսի ստացած դիրքը, և հայրապետանոցը իրենց ուզած ձեւին վերածելու համար ձեռնարկը, նոյն իսկ իրենց գործակցութեան դիմելը, մտադիր կը յետաձգէին աթոռի տեղափոխութեան դժուարին ձեւը, և առ այժմ կաթողիկոսին կ'օգնէին և կը գործակցէին իւր գտնուած տեղը վերանորոգել անկեալ աթոռը։ Այդ միջոցներուն Պօղոս ուզած էր անգամ մըն ալ Երուսաղէմ այցելել Մատթէոս վարդապետի հետ, թերեւս այն տեղի գործերը կարգադրելով փակելու, և կիլիկիոյ պէտք եղած անձերն ու միջոցները բերելու համար։ Սակայն Սսոյ աթոռին համար 1419'ին գրել տուած ճառընտիրին (ԱՍՏ.Ա.220), և 1422'ին գրել տուած Ցայսմաւուրքին ու Տարեգիրքին (ՍԻՍ.541),

*թուականները, հարկ չենք տեսներ իւր ուղեւորութեան տարիին հետ կապել, վասն զի հետուէն ալ կրնար ապսպրանքն ընել։ Աւելի հաւանական կը գտնենք 1423'էն՝ հայրապետանոցին չինութենէն ետքը թողուլ ուղեւորութիւնը։*

**1405.** *Ուրիշ պարագայ մըն ալ, զոր կը քաղենք, կրնայ մեր տեսութեամբ ուղեւորութեան պատճառն ու ժամանակը մեկնել։ Ցիշած ենք արդէն թէ Կոստանդին մը, Լեւոնի հեռանալէն ետքը թագաւորի անուն ստանձնելով դիրք մը կազմած էր Կիլիկիոյ մէջ, 1376 տարիէ սկսելով (§ 1349)։ Պատմած ենք ալ, թէ 1404'ին Օսմանցւոց տիրապետութեան սկիզբը բազմաթիւ գաղթականութիւն մը Սիսէ մեկնած էր, իրեն գլուխ ունենալով Կարապետ մը, որ կոչուած է Բան Կոստանդին Բաստորէ (§ 1381)։ Արդ սոյն այս Կոստանդինի վերջին անգամ Կիլիկիայէ հեռանալուն յիշատակութիւնն է, որ խնդիրին լոյս կը սփռէ։ Ժամանակագիր մը 1424 տարւոյն ներքեւ կը գրէ, թէ Բաստորն է Կեդրոս անցաւ, և ընդ նմին Բաղտամ էլխանն, Խարտանչէր փոհմականօքն Կոնդոբէրյ։ Նոյն տեղ թագաւորն ալ մատնանշուած է, Բաստորեայ Կոստանդին 48 ամ բացատրութեամբ։ Նշանակալից է, մանաւանդ որ նոյն ժամանակագիրին խօսքով, այն՝ որ վերջ այս Բաստորորդեան Կիլիկեցւոց, Լեւոն չէ, այլ այս Կոստանդինն է։ Կ'ըսէ ալ թէ Կիլիկեցւոց թագաւորութիւնը Լեւոն մեծէն սկսելով 226 տարի տեւեց, և իրօք այդչափ տարիներ անցած կ'ըլլան 1199'էն (§ 1063) մինչեւ 1424 (ՍԻՍ. 543)։ Այդ ժամանակագրութիւնը երկու տարիներու տարբերութիւն մը կու տայ, բայց այն ալ կրնայ լրացուիլ ուրիշ յիշատակարանէ մը, որ 1426'ին գրելով, է Բաստորորդեան Հայոց Կոստանդեայ կը նշանակէ (ԹՈՐ. Բ. 425)։ Այս թուականին տեղի ունեցած արտաքին մեծ եղելութիւնն ալ Եգիպտացւոց Սիսի վրայ յարձակումն է, Մուղէֆեր սուլտանին հրամանատարութեամբ, որուն ոչ կարացին դէմ ունել Օսմանցիններ և Հայեր, և ստիպուեցան տեղի տալ, և 30,000 փոն անցան յայնկոյս ծովու, անոնց հետ նաեւ Բաստորն է Կեդրոս անցաւ։ Եգիպտացւոց սուլտանը 1422'էն սկսելով Պուրսպէյ Աշրաֆ էր, և ոչ Մուղէֆեր, բայց հրամանատարը կրնայ սուլտանի ազգականներէն մէկը եղած ըլլալ, եթէ ժամանակագիրը անունը տալուն մէջ սխալած ալ ըսել չուզենք։ Արդ այս պարագայն, որ Հայոց պետը և բազմաթիւ գաղթականութիւն մը քաղաքը կը թողուր, շատ յարմար կու գայ Պօղոս կաթողիկոսին ալ հեռանալուն, և պատճառ մը Երուսաղէմ քաշուելուն, որ Եգիպտացւոց սուլտանութեան ներքեւ էր։ Ցուցէ անկէ Եգիպտոս ալ անցած է։ Ուղեւորութեանց թուականը 1424'ի և 1426'ի մէջտեղերը պէտք է դնել, յարձակումը և գաղթականութիւնը և քաղաքին յանձնուիլը, Պօղոսի Երուսաղէմ երթալուն և Սիս դառնալուն հետ կապակցելով եղելութիւն մը նկատելով։ Պօղոսի Սսոյ մէջ պաշտօնավարութիւնը ուրիշ պարագաներ չներկայեր, և Կիլիկիոյ հանդարտ մնացած ըլլալը կը ցուցնէ։*

**1416.** *Իսկ Հայաստանի վիճակը շատ փոթորկալից և աղէտալից էր, Գարագոյունլու Իսկէնտէրի երեսէն, որ 1422'ին հօրը Եուսուֆի իշխանութիւնը վերանորոգած էր Թաւրէզի մէջ (§ 1412), և պատուհաս մը եղաւ երկրին, վասն զի որպէս նա կենդանի էր ի մերոյ երկրէ, ամենայն երկիր ի վերուստ կայր և ի խաւարեան (ՄԵԾ. 108)։ Հազիւ թէ Թաւրիզ հաստատուած էր, որ Խլաթի կողմը յարձակեցաւ, և անգութ կոտորածներ ըրաւ Ծղակ և Աղուվանք բերդերու մէջ։ Սիւնեաց կողմերն ալ ասպատակեց, և յայնմ օրէ ի հետ ի լաց և ի սուգ նստան ամենայն ազգս Հայոց (ՄԵԾ. 83)։ Միւս տարին 1423'ին Բաղէշը աւերեց, և Վանը պաշարեց, և չորս ամիս շուրջը նստելով ոչ կարաց առնուլ, թէպէտեւ քաղաքին մէջ շատեր մեռան ի սովոյ և ի ջրոյ։ Թաւրէզ դառնալէն ետքը ի նոյն ամին լռեաց, 1424'ը հանդարտ անցուց, սակայն 1425'ին նորէն Վանի վրայ եկաւ և առաւ, Աղթամարն ալ գրաւեց, և այնչափ կոտորած ու աւեր ըրաւ, որ պատմիչը անհնար կը համարի ընդ Բէկ-արքանել ամենայն և զօրօքն (ՄԵԾ. 84)։ Ասպատակը կրկնուեցաւ 1426'ին Արծկէի կողմերը, և տարած-*

ուեցաւ մինչեւ Ռոմի։ Սուլտանիոյ առումն ալ 4 ամիս տեւեց (ՄԵԾ. 86), միշտ միեւնոյն անգթութեամբ։ Թաթարաց մեծ խաները գերիշխանութեան իրաւունք մը կը վերագրէին իրենց Արեւելքի միւս իշխաններուն վրայ, Շահռուհ ալ ուզեց զսպել Իսկէնտէրի յախուռն արշաւանքները, և 1427'ին անթիւ անհամար զօրօք եկաւ ի վերայ չէմար և անդէտ և անճանաչանք և հպարտ և գոռոզ քանանացին Սկանդարին (ՄԵԾ. 86), որ պարտաւորուեցաւ փախուստով ազատիլ։ Շահռուհ ալ իր կողմէն երկիրը աւրելով և աւարելով վրէժ լուծեց Իսկէնտէրէ, և ձմեռը վրայ հասնելուն Ղարաբաղի դաշտը քաշուեցաւ, որ է հին Մուղանը, և անդ անցոյց զդառնաշառաչ տառապեալ ժողովրդոյ (ՄԵԾ. 87)։ Իսկ Իսկէնտէրի ցրուած գունդերը՝ Վասպուրականը, և մանաւանդ Բաղէշերուննեաց գաւառը կոտորեցին և աւերեցին, ի վերոտ ջրեան էր և տեղատարափ, և ի Ներքոտ գաւառաբնեան անցրինոյ։ Վանայ ծովակին կղզիները փախստականներով խռնուեցան, նոյն Մեծոփեցին ալ Լիմ ապաստանողներուն մէջ էր, ուր և ոչ նստելոյ և յառնելոյ տեղի գտաւ, թէպէտ սիրալիր ընդունելութիւն տեսաւ առաջնորդ Յովհաննէս վարդապետէն։ Տագնապը այնտեղ ալ կը հասնէր եւտեւնէն, և Ամիւկի իշխան Հաճիբէկը բրածեծ բռնադատութեամբ, մէկ գիշերուան մէջ 40,000, բայց իրօք 100,000 դահեկանի ոսկի և արծաթ կը կորզէր փախստականներէն (ՄԵԾ. 88)։ Այդ աղէտը տեղի ունեցած է 1428 Վարագայ պահոց մէջ, որուն տօնը այն տարի կ'իյնար սեպտեմբեր 26'ին։ Օսման Աքքոյունլուն պատեհէն կ'օգտուէր Գարաքոյունլուներուն վրայ յարձակելու, և հալածելու, որով զառաջի յիշեալոյն ամեն երես, ամենայն մի հանգիստ կը լինէր երկրին, սակայն 1429 գարնան Իսկէնտէր կը դառնայր և Արծկէ կը պաշարէր, բայց հազիւ ատեան առաջի նստած էր անդէն, որ իրեն վրայ կուգար Ջօնկայ, Շահռուհի որդին, բայց չէր յաջողեր, վասն զի Իսկէնտէրի զօրեղ Թաթարի մը հետ մենամարտը յօգուտ Իսկէնտէրի վերջանալուն, Թաթարներ ետ կը քաշուէին, և Իսկէնտէր Բասէն կ'արշաւէր (ՄԵԾ. 90)։ Երկրին Հայերը չփոթած ու վարանած, ի ծերպս և ի ծակս վիմաց քարոցեաց կոչէ (ՄԵԾ. 91), այսու հանդերձ անթիւ և անհամար էին Խորասան տարուած գերիները։ Մինչեւ յաջորդ 1430 տարւոյ Պէնտեկոստէն, այսինքն յունիս 4, Թաթարներու ասպատակը կը շարունակէր, և անոնց մեկնելէ ետքը Խաչի տօնին օրը, սեպտեմբեր 17'ին, Իսկէնտէր նորէն Արծկէն կը պաշարէր, բայց այս անգամ քրիստոնէից գլխաւորներէն Արծկէի տանուտէր Մուրատ, և Արճէշի տանուտէրներ Յովհաննէս Փոքոյ և Գորգի Աղոյ, քաղաքին այլազգիներէն գաղտնի բանակցութեան մտան և անձնատուր եղան, և վնաս չկրեցին (ՄԵԾ. 93)։ Այս եղեն ամէն որ ի ներքոյ դառն պատահարաց կամք, կ'ըսէ Մեծոփեցին, 1422'է ասդին եղած աղէտներուն ակնարկելով (ՄԵԾ. 95), զորս հազիւ թէ քանի մը տողերով յիշեցինք։ Երբ 1431 տարին սկսաւ, սով սաստիկ եղև Հայաստան և Ատրպատական, և այնչափ սաստիկ, որ ոչ միայն դիմեցին ի յարօտս և ի դաշտս խոտեանց, զենուլ և ուտել, այլ մինչեւ իսկ Թաւրէզի մէջ կերեալ էին հաւուրց ոտէ ձագունս և յայտնս, և գայլեր անթաղ դիակներ ուտելու վարժուած, ողջերու վրայ ալ կը յարձակէին և կը գիշատէին (ՄԵԾ. 94)։ Մեծոփեցին իւր կողմերը եղածին ականատես, հիւսիսային գաւառներու համար ալ Զաքարիա Տեղերցի արեղային վկայութիւնը կը յիշէ։

**1417**. Վերոյիշեալ տեղեկութիւնները քաղեցինք, ոչ թէ քաղաքական եղելութեանց կատարեալ պատմութիւնը տալու նպատակով, այլ միայն գաղափար մը տալու թէ ինչ արկածներ և աղէտներ կը տիրէին Հայաստանի մէջ, որոնք պիտի չներէին եկեղեցւոյ պաշտօնեաներուն և վարդապետներուն գործնական մտադրութիւն դարձնել կաթողիկոսական խնդիրին (§ 1409)։ Բարեբախտաբար Պօղոս Գառնեցին էր հայրապետական աթոռին վրայ, որ կրցածին չափ բարեկարգութեանց կը հետեւէր և աթոռին կացութիւնը վերանորոգելու կ'աշխատէր։

ՀԱՒԱՏԱՓՈԽ ՀԱՑԵՐ

Եկեղեցական տեսակէտէն նկատառութեան արժանի պարագայ մըն ալ կը յիշէ Մեծոփեցին, թէ մաս մը Հայեր վասն աղքատութեան և սովոյն տառապանաց, ճնշեալ խառնե֊

ցան է Քուրդն Բաղէշոյ, Մշոյ և Սասնոյ, և եղեւ է հասարակ դարձեալ յանհաւատութիւն (ՄԽԾ. 95), և վրայ կը բերէ թէ «ամէն որդէք նոցա անհաւատութեամբ և ընտան ըուշխարհս ամենայն» (ՄԽԾ. 96)։ Հայաստանի ազգաբնակութիւնը ուսումնասիրողներուն համար գաղտնիք մը չէ, թէ այնտեղ գտնուող խալամ տարրէն Թուրք կոչուած ստուար մաս մը, և Քուրդ անունի ներքեւ ճանչցուած մաս մը՝ Հայ արիւնի սերունդ է, որ ժամանակին դժպհի պարագաներու ներքեւ իր ազգային եկեղեցիէն բաժնուած, և տիրապետող տարրին դէնը ընդունած է, իբրեւ կեանքի ապահովութեան միջոց, կամ իբրեւ վտանգներէ զերծ մնալու փաստ, կամ իբր չահի ու փառքի ու պաշտօնի հրապոյր։ Այդ կէտը չատ յայտնի կերպով կը հաստատուի դիմագիծերու զննութեամբ ալ, զանազան Քուրդ ցեղերու վրայ մնացած հայկական աղաւաղեալ կոչումներով ալ, և չատ տեղեր պահուած հայերէն լեզուով, և կենդանի մնացած պատմական աւանդութիւններով։ Սակայն ժամանակակից պատմիչի մը բացայայտ վկայութիւնը ասոնց ամէնուն վրայ իր գերակչռութիւնն ունի, չուզելով ալ այն կէտերը մտադրութենէ վրիպեցնել։ Մեծոփեցին միայն կեան աչ+աղութեան և ոտէշյն տեղի ունեցած հաւատափոխութիւնները կը յիշէ, բայց անչուչտ այդ պատճառներէն չատ աւելի ազդու և զօրաւոր եղած են սուրն ու դաչոյնը, տանջանքն ու չարչարանքը, գերութիւնն ու հարստահարութիւնը, և ո՛վ գիտէ որչափ հազարներ, և որչափ բիւրեր այդ պատճառներով հաւատքնին ուրացան։ Թերեւս չատեր առաջ կեղծեօք ըրին, սակայն զաւակնին նորընկալեալ դենին մէջ ծնան ու սնան, և սերունդները խալամ սեպուած Թուրք և Քուրդ տարրերը աճեցուցին։

**1418**. Այդչափ աղէտներու և անկումներու մէջ չէին պակսեր նաեւ իրենց հաւատքին համար կեանքերնին զոհող առաքինիներ ալ, որոնց մէկ քանիին անունները կը գտնուի մեզի հասած գիրքերու մէջ. բայց չատ ու չատ են ի դղրութեան կենաց գրուածները։ Ցիմար Վանեցի ամուսնացեալ կին մըն էր, բայց չենք գիտեր թէ իբր յատուկ անուն

ՑԻՄԱՐ
ՎԱՆԵՑԻ

կամ իբր մակդիր անուն կը կրէր այդ կոչումը։ Այրը սպանուած էր Վանայ 1387ին կոտորածին մէջ (§ 1365), և ինքն անդէր և անոյցելու մնալով, իբր հացեփեաց մտաւ Քուրդի մը մօտ, որուն կինը մեռնելուն անկաս ըստ Ցէմարէն, ուսկից որդի մը և դուստր մըն ալ ունեցաւ (ՆՈՐ. 224)։ Քուրդին ազգականները ստիպեցին զայն որ կինը սաճկացնէ, և իրենց վրայ առին ստիպել, բայց վերջէն գոհացան որ եկեղեցիին վրայ երեք քար նետէ։ Ցիմարը քարերը նետեց, և Քուրդեր զինքն հանդարտ թողուցին, և այսպէս ապրեցաւ իբր կեղծուրաց, դրեթէ 20 տարի (ՆՈՐ. 225)։ Սակայն Ցիմարի խիղճը հանդարտ չէր, և որպէս զի կարենայ իբր քրիստոնեայ ապրիլ, չուրջ 1406ին Մակու քաշուեցաւ, ուր կ'իշխէր Սուրղաթմիշ քրիստոնեայ (§ 1406)։ Ցիմար այնտեղ մնաց իբր 10 տարի, բայց այնտեղ ալ անոր միտքը չփոխեցին, թէ պէտք է կեղծուրացութիւնը քաւէ ուր որ զայն ըրած էր։ Այդ միտքով դարձաւ Վան, իրեն Քուրդ էրոջ և Քուրդ զաւկին մօտ, որ զինքը ազատ թողած էին իր քրիստոնէութեամբը ապրիլ։ Բայց ազգականներ և դրացիներ նորէն լեզու եկան տեսնելով որ քրիստոնէից եկեղեցին կը յաճախէ։ Կարդացողներ ալ զործին խառնուեցան, երբ օր մը եկեղեցիէն կը դառնար, և ստիպեցին որ քրիստոնեայ ըլլալը ուրանայ, մինչ Ցիմար բարձրաձայն կը պնդէր։ Ստիպելու համար սկսան զարնել և հարուածել, խել կինը մինչեւ քաղաքին հրապարակը վազեց և կանգ առաւ, և այն տեղ քարկոծելով սպաննեցին, երբ Ցիմար գոհունակութեամբ կը կրկնէր, թէ «տէրն Ն որ յաղթօրանն յերեցի, եւ է կատաֆս էմ տանամ»։ Նահատակութեան թուականը ձեռագիրները 1418 կը դնեն (ՆՈՐ. 227), թէպէտ ուրիշներ 1416 դրած են (ՁԱՄ. Գ. 438), իսկ ամսաթիւը փետրուար 3 նշանակուած է Յայսմաւուրքի մէջ (ՅԱՍ. Ա. 62)։

**1419**. Արծկէի իչխաններէն էր Վալին (ՁԱՄ. Գ. 441), Մուրատ-Շահ կոչմամբ ճանչցուած, զի էր էհրէւ Բուստոր երէցոնէից է Վէշ Ծովս Բզըրէս, այսինքն Վանայ լիճին չրջանակին մէջ։ Իբր իր ազդեցութեան յայտարար կը

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆՑԻ
ՆԱՀԱՏԱԿՆԵՐ

պատմուի, թէ «նոր հէծ եւ է մեզ անօրէնաց խաղէն եւ աւերողաց ձեռք օրհնել է Յովհաննէս Տեառն», ուսկից կը հետեւցնենք թէ այս տեսակ արարքուածնք ընդհանրապէս ներուած չէին։ Այլազգիներ նախանձելով եւ Զենոն անուն մատնիչ Հայ մըն ալ իրենց ընկեր առնելով, քաղաքապետին ամբաստանեցին, որ խոլոյն ուրացութիւնը առաջարկեց իրր ազատութեան միջոց, եւ երբ իշխանը մերժեց, նախ բանտարկուեցաւ, եւ յետոյ պարիսպէն կախուած նետահար եւ նետոլէց նահատակուեցաւ (ՄԵԾ. 110)։ Ուրիշ տանուտէր մըն ալ Զաքարիա անունով, որ նոյնպէս Արծկեցի կ'երեւի, միեւնոյն կերպով ուրացութեան բռնադատուեցաւ, եւ չհաւանելուն վրայ, «ի դարանից նորա դարան արկեալ հեղձուցին»։ Զաքարիային նահատակութիւնը Մուրատչահէ առաջ տեղի ունեցած կ'ըսուի (ՄԵԾ. 110)։ Նոյն միջոցին Զաքրիչատ աւանի Մկրտիչ ձեռնաւորը եւ իր ութ անդամէ բաղկացեալ ընտանիքը, կրակի մէջ այրելով նահատակուած են։ Նոյնպէս Ասպիսնակ գիւղի Յովհաննէս ձեռնաւորը հաւատոյ համար նահատակուած է։ Արխատակէս Բաջրերունին ալ, զոր «եղբայր ծառայիս» կը կոչէ Մեծոփեցին, առանց յայտնելու թէ մարմնաւոր կամ հոգեւոր եղբայրութեամբ։ Նահատակութեան կերպին համար ալ կը գրէ, թէ «ի հուրն խորովեցին երբեմն զերանեալն»։ Այդ վերջիններուն նահատակութեան թուական կը դրուի 1420 տարին, եւ բռնաւորն ալ եղած է Ամիւկ բերդին իշխան Փիրալի (ՄԵԾ. 111)։ Այս նահատակներուն հետ պէտք է դասենք Արճէշի եւ Արծկէի մէջ իրենց քրիստոնէութեան համար կոտորուած Հայերը, եւ նոյն պատճառով ծանր տառապանք կրող խեղճերը, որոնց համար կը գրէ պատմիչը, թէ «առանց ամօթոյ խորով ծածկէին զնոստեան, եւ մերկ եւ բոկիկ շրջէին իբրեւ զանասուն» (ՄԵԾ. 111)։

**1420.** Ժամանակակից նահատակներուն մէջ աւելի նշանաւոր է Վարդան Բաղիշեցին, բնիկ լճեղերեայ Դատուան գիւղէն (ՆՈՐ. 234), ամուսնացեալ հոգատէր մը, որ միջոց մըն ալ շրջակայ վանքերը պտտելով աղօթատէր եւ հոգեւոր կեանք կ'անցընէր։ Բաղէշի ամիրայ Շամշատինի ուրացութիւններ քաջալերելու եւ բռնադատելու ջանքերը ծանր թուեցան Վարդանի, եւ միտքը դրաւ գործին անտեղութիւնը անոր իմացնել, եւ անձամբ ներկայանալով յայտնեց, թէ Աստուած 72 լեզուներէն իւրաքանչիւրը իւր օրէնքովը կը թողու, «զինչ հրամանդ քո աւելի է՞ քան զԱստուածոյն, որ կամենաս զամենեսեան ի քո օրէնսդ փոխել» (ՆՈՐ. 237)։ Խօսակցութիւնը երկարելուն ու Վարդանի համարձակութեան վրայ զայրանալով, ամիրային քանի մը հարուածներ ալ տուաւ Վարդանի, եւ հրամայեց բանտարկել ու չարչարել։ Այդ եղած է 1421 յունուար 1'ին չորեքշաբթի օր, իսկ Հայոց 870 նաւասարդի 27'ին, Ըստ այսմ յեղանակին գուրտին ներքեւ բանտ կը տանին Վարդանը «մերկ եւ բոկ եւ ցնծալով» (ՆՈՐ. 238), «ուր զերիս աւուրս ոչ դադարէին ի չարչարելոյ», որոնց վերջը յունուար 4'ին նորէն ամիրային առջեւ կը հանեն, իսկ նա համարձակ, մինչեւ իսկ ղուրանէն Յիսուսի համար գրուածները յիշելով, իր հաւատքը կը պաշտպանէ։ Ասոր վրայ մահուան վճիռի համար դատաւորին կը յանձնուի, եւ նոյն օր «սրով եւ բրով եւ քարամբ» կը նահատակուի «յունուար ամսոյ ի 4, ծննդեան պահոցն յաւուր շաբաթու, ի մետասան ժամու» (ՆՈՐ. 242), կիրակամուտի երեկոյին։ Թուականին մասին եղած այս ստոյգ եւ ճիշդ տեղեկութեան վրայ, աւելորդ կը դառնայ յայսմաւուրքներու տարբերութեանց հետեւիլ (ՆՈՐ. 243)։ Յիշեալ 1421 տարւոյն ընթացքին պատահած է նաեւ երկու Հաբէշ կամ Եթովպացի քահանաներուն նահատակութիւնը Խիզանի մէջ, որոնք սուրբ տեղեաց ուխտաւորութենէ ետքը Հայաստանի սրբավայրերը եկած էին, եւ «նահատակեցան ի ձեռաց այլազգեաց», եւ թաղուեցան Բարեձորի վանքը (ՆՈՐ. 244), որ է Եօթնխորան Ս. Աստուածածինը Խիզանի մէջ, եւ կը յիշուին «Հաբաշ քահանայք» կոչմամբ, բուն անուննին անծանօթ մնացած ըլլալով։ Բաղէշի հալածանքներուն միջոցին կ'իյնայ եւս Հայոց 874'էն 3 կամ 4 տարի առաջ, այսինքն է 870'ին կամ 1421'ին կատարուած Թովմաս Պուտլիկցի վարդապետին նահատակութիւնը։ Վկայութեան պարագաները չեն պատմուած, այլ միայն ըսուած է թէ՝ Սիմէոն

ԲԱՂԷՇԻ ՀԱԼԱԾԱՆՔԸ

Ուշտունի վարդապետին աշակերտ էր, գիտող մեծարուսանց, ռետոր ռիտոռիկեան և աշխէց, և թէ ներքին հոգեւորականին (ՄԵԾ. 44)։ Պատլիկ վանք Ուշտունիք գաւառին մէջն է, և անոր առաջնորդը պիտի ըլլայ Սիմէոն Ուշտունին, որ ուրիշ կողմէ մեզի ծանօթ չէ։

**ՍՈՐԲԵՑԻ ՎԿԱՆԵՐ**

**1421**. Բաղէշի հալածանքը երբ ոմանց մարտիրոսական պսակներ կը պատրաստէր, ուրիշներու ալ գլորման պատճառ կ'ըլլար, և այս կարգէն եղած էին, Ստեփանոս վարդապետ Ցէկուայ Ս. Գամաղիէլ վանքէն, Պետրոս քահանայ Խիզան քաղաքէն (ՆՈՐ. 247), և Ստեփանոս Սորբեցի աշխարհական երիտասարդ մը (ՆՈՐ. 257)։ Վարդապետն ու քահանան ալ Նորաքաղաքին ծաղկունք (ՆՈՐ. 257) կը կոչուին, և գեռ երիտասարդներ էին, երկուքն ալ բարեկեցիկ կ'ապրէին Բաղէշի մէջ, այլ սիրտերնին անհանդարտ և խիղճերնին միշտ խռով, իրարու հետ չարունակ կը ցաւակցէին և կը խորհրդակցէին, մինչև որ փոխադարձ իրար քաջալերելով որոշեցին ետ դառնալ, մինչև իսկ կեանքերնին զոհելու պատրաստականութեամբ։ Այդ մտադրութեամբ նախ գիր մը ուղղեցին Խիզանի դատաւորին, որուն առջև ուրացութիւննին ըրած էին, ետևէն իրենք ալ Բաղէշէ մեկնեցան, Բարեձորի վանքը այցելեցին, ուր տարի առաջ թաղուած էին նահատակ Հապաշ քահանաները, երեք օր մնացին, խոստովանեցան և հաղորդուեցան Համբարձման օրը (ՆՈՐ. 251), 1424 յունիս 1'ին, և միւս օր ուրբաթ յունիս 2, Խիզան մտան և համարձակօրէն ուղղուեցան դէպի եկեղեցին ի վեց ժամու աւուրն (ՆՈՐ. 252), աղօթեցին և այն տեղ եղողներուն իրենց զղջումն ու քրիստոնէութիւնը յայտնեցին։ Գլուխնին ժողվուող քրիստոնեաները հեռացուցին, որ փորձանքի չհանդիպին, իսկ այլազգիներուն իրենց հաստատուն վերադարձը կը բացատրէին, որոնք ամբոխիւ երկուքն ալ դատաւորին առջև հանեցին։ Սովորական յորդորներէ և սպառնալիքներէ ետքը առաջ Պետրոս քահանային բերել հարկանեալ կոտորեցին զքահանայն, և նոյնժամայն սրով և քարիւ նահատակեցին։ Ետքէն վարդապետին վրայ յարձակեցան, նախ ինքն դատաւորն տապով, բայց Ստեփանոսի անվեհեր յանդիման պատասխանելուն վրայ, կոչնակ և բրով, քարի և ջայլի սպաննեցին վարդապետն ալ (ՆՈՐ. 257), միևնոյն օրը յունիս ամսոյ երկու, յաւուր Համբարձմանն ուրբաթու (ՆՈՐ. 260)։ Ասոնց նահատակութեան լուրը Սորբի մէջ լսուելով, Ստեփանոս երիտասարդն ալ ոգևորեց, որ քրիստոնեայ ըլլալը յայտարարեց, այդ մասին իր մօրմէն ալ քաջալերուելով, և երբ սպառնալիք և հրապոյր արդիւնք չունեցան, տեղւոյն այլազգիներ որպէս գայլն յօշոտեցին և նահատակեցին զայն (ՆՈՐ. 259)։ Ստեփանոս Սորբեցիին մարտիրոսութիւնը կատարուեցաւ յետ ինն աւուր նահատակութեան Խիզանցիներուն (ՆՈՐ. 258), որ է ըսել 1424 յունիս 11'ին, Հոգեգալուստի կիրակի օրը։

**ԳՐԻԳՈՐ ԽԼԱԹԵՑԻ**

**1422**. Մարտիրոսներուն կարգը պիտի դասենք նաև մարտիրոսներու գովաբան և Յայսմաւուրքի նոր կարգադրող և տաղերու և գանձերու հեղինակ Գրիգոր Խլաթեցի վարդապետ՝ Ծերենց մականուամբ ծանօթ։ Գրիգոր նախապէս 8 տարի Որոտնեցիին աշակերտ և Տաթևացիին աշակերտակից եղած էր (ՄԵԾ. 85), յետոյ Սուխարու մէջ Սարգիս Ապրակունեցիէն աշակերտեցաւ (ՄԵԾ. 41), վերջէն Տաթևացիին ալ հետևեցաւ երբոր նա Մեծոփ եկաւ (ՄԵԾ. 52), և երբ առաջնորդ Վարդան Հոգոցեցիին յաջորդեց Սալնապատի մէջ (ՄԵԾ. 41), բայց պարագաները չներեցին մեծ աշակերտութիւն կազմել, և Ցիպնայի վանքը քաշուելով ընդօրինակութեանց և Յայսմաւուրքի կարգադրութեան զբաղեցաւ (§ 1383)։ Այդ աշխատութիւնը 50 տարի չարունակած և 70 տարեկան եղած էր, երբ Երուսաղէմ ուխտի գնաց, ուր երկու ամ յամեալ, նորէն իր վանքը դարձաւ (ՆՈՐ. 501)։ Խլաթեցին 75 տարեկան եղած էր (ՄԵԾ. 85), երբ Իսքէնտէրի Թիւրքմէնները Արծկէի կողմերը արշաւեցին (§ 1416), և Ցիպնայի վանքն ալ հասան։ Միաբաններ փութացին փախչիլ, այլ չկրցան ծերունին ալ միասին տանիլ, որուն ծանր կու գար իր սիրելի վանքը լքանել, և կը պատասխանէր. Աստ

*կոչէր և սոր մնայց* (ՀԱՑ·501)։ *Դեռ խորհուրդի վրայ էին, երբ ասպատակները մօտեցան, միաբանները անհապարեցին, իսկ ծերունին մինակ մնացած անոնց ձեռքը ինկաւ, որոնք յոյժ տանջեալ չարչարեցին զոր ուրանայ, և մերժելուն վրայ նոյն ժամոյն զենին զնա իբրեւ զգառն անմեղ* (ՄԵԾ·43)։ *Նահատակութեան օրը գրուած է* 1425, *մայիս* 9, *Հոգեգալուստին կիրակին* (ՀԱՑ·561), *որ տոմարով չարդարանար, ուստի մենք ալ կը համաձայնինք տօնին օրը պինդ բռնելով, և ամսաթիւի տարբերութիւնները մօտեցնելով*, 1426 *մայիս* 19'*ին Հոգեգալուստի կիրակիին դնել Խլաթեցիին նահատակութիւնը* (ՆՈՐ·274)։ *Թաղումը կատարեցին Յակոբ ճգնաւոր վարդապետը, Խլաթեցիին հօրեղբօր որդին, և նահատակին աշակերտներէն Սարգիսոս եպիսկոպոս և ուրիշներ։ Եւ մի միայն Յակոբ Խլաթեցի ազատեցաւ նորա ձեռնէն, և միւս տարին ի Համբարձման յաւուր վերացման, հոգին աւանդեց երբ քահանաներ Համբարձաւ Տէրն մեր յերկինս կ'երգէին։ Այս հաշուով Յակոբի ալ մահը համդիպած կ'ըլլայ* 1427 *մայիս* 29'*ին*։

**1423**. *Արծկէի արշաւանքէն յետ երկու ամ*, 1428'*ին*, *Ուշտունիք ասպատակեցին Իսքէնտէրի գունդերը, և չատեր նահատակեցին։ Անունով կը յիշուի Յակոբ Ոստանացի վարդապետը*

ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ ԵՒ ԿՈՅՍ ՄԸ

(§ 1481), *Անծղնապատ վանքէն, որուն մարմինը թաղուած է Նարեկի մէջ, Գրիգոր Նարեկացիի գերեզմանին մօտ* (ՄԵԾ·43)։ *Նոյն միջոցին Ղազար Բաղիշեցի վարդապետը փութաց Սասունի լեռները ապաւինիլ. սակայն հոն ալ ճանչցուեցաւ, և Քրիստոսի աստուածութիւնը ուրանալ չուզելուն հարեալ սրով սպանին զնա* (ՄԵԾ·44)։ *Յիշատակներ Սիմէոն Այրիվանեցի վարդապետն ալ, համանաբար նոյն ինքն Տաթեւացիի աշակերտներէն եղող Սիմէոն Սիւնեցին, որ բարեկարգած է նախ Եղիվարդի վանքը և յետոյ Այրիվանքը։ Նկատողութեան արժանի են իր կարգադրութիւնները որք վանքերու կանոնները կ'ամփոփեն։ Վանականներուն զգեստը բրդեղէն կամ մազեղէն կամ մաշկեղէն միայն պիտի ըլլայ, պատարագողները պարտաւոր պիտի ըլլան երեք յիսնակներ պահել, որք են քառասնորդաց, ամարան և յիսնակաց, շաբաթ և կիրակի օրերն ալ մէկտեղ, պատարագած օրերնին ութը կանոն պիտի քալեն, և գինի ու միս պիտի չուտեն, վանականներ ի ժամատունէն, ի հացատունէն և ի քնատունէն, այսինքն եկեղեցին ու սեղանատունը ու խօսարանը միայն մէկտեղ պիտի ըլլան, պարսպափակ շրջապատի մէջ պիտի բնակին, առանց հրամանի դուրս պիտի չելլեն, քնոյ ժամը ի մի վայր պիտի ըլլան, սանամայր, քոյրտոյր կամ մայրտոյր պիտի չունենան վանքին մէջ, և հնազանդ պիտի ըլլան առաջնորդաց։ Սիմէոնի մահը տեղի ունեցած է* 1428'*ին* (ՀԱՑ·570)։ *Անցողակի պիտի յիշենք թէ Յայսմաւուրքը մայիս* 9'*ին կը նշանակէ Վարդենի* (ՅԱՍ·Ա·201) *կամ Վարդենիկ կոյս մը* (ՀԱՑ·557), *որ կուսութիւնը պահպանելու և իրեն եռեւէն ինկող երիտասարդին ձեռքէն ազատելու համար, ստայնանկի կկոցով աչքերը կը կուրցնէ։ Ոմանք այդ միջոցին կը դնեն Վարդենիի արիական գործը* (ՋԱՄ·Գ·443), *սակայն ոչ այդ միջոցին և ոչ կոյսին հայ ըլլալը կը քաղուի Յայսմաւուրքներէն, որ առանց տեղի և առանց թուականի կը պատմեն եղելութիւնը, և անունին հայ հնչումն ալ թարգմանաբար նշանակուած կրնայ ըլլալ*։

**1424**. *Գարաքոյունլու Իսքէնտէրին օրով Հայաստանի աղետալի վիճակին նկարագիրը տուինք արշաւանքներու պատմութիւններով և մարտիրոսներու յիշատակութիւններով, և այսչափն ալ կը բաւէ հասկցնելու թէ ինչ շփոթ ու խառնակ վիճակի մէջ էր եկեղեցական կացութիւնը։ Հարաւային Հայաստանը Աղթամարի աթոռին վիճակ կը կազմէր Տաթեւացիին այն կողմերը գալէն առաջ, իսկ Հիւսիսային Հայաստանը թէպէտ Սսոյ աթոռին իրաւասութեան ներքեւ էր, սակայն յարաբերութիւններ դժուարին էին։ Ինչչափ ալ Պօղոսի կաթողիկոսութիւնը կապերը պաշտօնապէս ամրապնդած էր, սակայն քաղաքական խռովութիւններ չէին ներեր սերտ գործակցութիւն հաստատել, և հետեւապէս հիւսիսային վիճակներ*

ԱՂԹԱՄԱՐԻ ՇՓՈԹՆԵՐ

իրենք իրենց կը գործէին, մեծ վարդապետներուն գլխաւորութեամբ։ Աղթամարի աթոռը դադրեցնելով միակ հայրապետական աթոռ մը հաստատելու փորձը ձախողած էր (§ 1400), և Դաւիթ իր աթոռին վրայ անխախտ մնացած էր, սակայն Տաթեւէ դարձող և Տաթեւացիին գործակից Վասպուրականցի վարդապետներ, որչափ հնար էր, ամուր կը մնային իրենց միտքին վրայ և Աղթամարի չէին հպատակեր։ Ըստ այսմ, այդ ժամանակէն սկսած է ճանչնալ Աղթամարի իրաւասութեան սահմաններուն ամփոփուիլը, և Արծկէի, Արճէշի, Բերկրիի և շրջակայ գաւառներուն Աղթամարէն զատուիլը։ Այս հետեւանքին կը նպաստէր Դաւիթ կաթողիկոսին ալ մահը, որ անծանօթ հաւանականութեամբ կը դրուի 1423'ին (§ 1376), և իրեն յաջորդութեան մեծամեծ խնդիրներու տեղի տալը, որոնց եթէ մեծ պատճառը փառասիրական ներհակընդդէմ ձգտումներն էին, մասամբ ալ իրաւասական խնդիրը կրնայ եղած ըլլալ։ Աղթամարի Հաւաքարանը Դաւիթի մահէն, մինչեւ անոր եղբօրորդւոյն Զաքարիայի զօրանալն ու տիրապետելը, այսինքն է 1423'էն մինչեւ 1437, 14 տարիներու միջոցին համար 21 կաթողիկոսներու անուն գտած ու ցուցակագրած է (ՕՕ. ԲԻՋ. 1195), և այս միայն կը բաւէ ցաւալի կացութեան ծանրութիւնը իմանալու։ Երկրին աղէտները չէին կրնար Ունիթորներուն ալ աննպաստ չըլլալ, որոց յախուռն գործունէութիւնը կանգ կ'առնէր քաղաքական չփոթներուն առջեւ, և ոչ ալ նոր զարգացում կը ստանային իրենց ձեռնարկները։ Նախիջեւանի եպիսկոպոսներու և Երնջակի գաւառահայրերու անուններ քաղուած են զանազան յիշատակներէ (ՍԻՆ. 388), սակայն նկատողութեան արժանի է որ ամէնքը հայազգի չեն, և օտարազգիներ ալ անխտիր պաշտօնի կը կոչուին պապերուն կողմէն։ Սակայն կը հաստատէ Ունիթորական կամ հռոմէադաւան ուղղութեան շատ չուտ խակատիպ լատինականութեան յանգիլը, ինչ որ ալ ուզեն ըսել այդ ուղղութեան պաշտպանները։ Մխիթար Ապարանցին, յոհաննու շնորհաւոր Մխիթարեանց (ՍԻՆ. 390), և իրենց եռանդուն փաստաբանը, որուն բազում ինչ անզգոյշ եւ անխնահեմ բանիւ եւ ի՛նքնայ ապելութեան գրած ըլլալը իր դաւանակիցներն ալ կը խոստովանին (ՉԱՄ. Գ. 419), մինչեւ 1410 հասուցած է իր գիրքը, և անկէ ետքը տեղեկութիւններն ալ կը նուազին Ունիթորներուն գործունէութեան վրայ։

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ

**1425.** Պօղոս պատրիարք Երուսաղէմէ Սիս եկած ատեն հարկաւ իր տեղը մէկը նշանակեց աթոռը կառավարելու, և այս եղած պիտի ըլլայ Մարտիրոս Եգիպտացի եպիսկոպոսը, որ պատրիարք ալ ընտրուեցաւ երբ Պօղոս կաթողիկոսութեան բարձրացաւ 1418'ին։ Իրեն ժամանակն էր որ Պուրսպէյ Աշրաֆ սուլտան Եգիպտոսի, գահակալութեան առաջին տարիներուն մէջ Երուսաղէմ եկած ըլլալով, չենք գիտեր ինչպիսի առիթէ գրգռուելով հրամայեց, Ս. Յարութիւն տաճարին դուռը փակել քրիստոնէից դէմ, և անոնց մուտքը արգիլել։ Մանօթ է արդէն որ մինչեւ այսօր ալ Ս. Յարութեան տաճարին դուռը Տաճիկներու պահպանութեան յանձնուած է, և իրենք են բուն պահապանները, և քրիստոնեայ դռնապաններ երկրորդ անունով ճանչցուած են իբր երկրորդական կամ օգնական։ Այդ կարգադրութիւնը ծանր եկաւ Եթովպիոյ թագաւորին, Իսահակ անուն, և իր տէրութեան ներքեւ գտնուող այլազգիները հրամայեց կոտորել, որուն փոխարէն Պուրսպէյ ալ Պաղեստինի և Եգիպտոսի քրիստոնեաները ջարդել պիտի տար, եթէ նոյն իսկ պետութեան աւագանին, յառաջ դալիք տագնապը յիշեցնելով ետ առնել չտար սուլտանական հրամանը (ԱՍՏ. Ա. 220)։ Այս պատճառներով է կաթողիկոսութեան տէր Պօղոսին, յԵրուսաղէմ Յարութեան դրան երկաթ փակեալ կայր (ՍԱՄ. 174), զոր ի դէպ է դնել 1424 և 1426 տարիներու միջոցին։ Բայց անկէ ետքը կ'երեւի թէ պահ մը հանդարտ տարիներ շարունակեցին, և Մարտիրոս պատրիարք ալ չինարար պաշտօնավարութիւն ունեցաւ մինչեւ 1430, երբ իր ծերութեան պատճառով, իրեն աթոռակից առաւ Եսայի եպիսկոպոսը (ԲԱՌ. 48), որ աւելի ներքին վարչութեամբ կը զբաղէր, մինչ Մարտիրոս կը շարունակէր

ազգային ստացութեանց վէճերուն հետեւիլ։ Գլխաւորապէս պարտաւորուեցաւ Գողգոթայի սրբավայրին տիրապետութեան հետեւէն ըլլալ, զոր Վրացիք յաջողեր էին 1431'ին Հայերուն ձեռքէն գրաւել (ԱՍՏ. Ա. 222)։ Բայց Մարտիրոս Եգիպտոս գնաց 1433'ին, և երեք տարի անխոնջ աշխատելով, ծախսելով և խոստանալով, ձեռք ձգեց 1436'ին վերստին ստացութեան հրովարտակը (ԱՍՏ. Ա. 226), և Երուսաղէմ դառնալով գործադրել տուաւ 1438 տարւոյ պաշտօնական գրութեամբ (ԱՍՏ. Ա. 225)։

ՊՕՂՈՍԻ ՄԱՀԸ

**1426.** Պօղոս կաթողիկոսի ժամանակակից ցրիւ եղելութիւնները քաղելու հետեւելով, աչքէ վրիպեցուցած եղանք Կիլիկիոյ գործերը, որոնք հանգարտ կերպարան մը առած էին մեծ գաղթականութեանց և Պօղոսի Սիս դառնալէն ետքը (§ 1415)։ Եթէ քաղաքական դիրքը մեծ յուզումներ չէր ներկայեր, Եգիպտական տիրապետութեան վերահաստատուելէն ետքը, ներքինը սկսած էր ընտանի գրգռութիւններ բուսցնել։ Կիլիկիոյ հայրապետանոցին մէջ աղթարմայական խմորը կանուխ դրուած էր, իսկ Պօղոս Արեւելեայց ուղղութեան հետեւող՝ անիկայ անհետացնելու ձեռնարկած էր, և այդ նպատակով Արեւելեան վարդապետներ ալ բերել տուած էր (§ 1414), և կը սկսէր անոնցմով շրջապատուիլ։ Այսպիսի պարագաներու մէջ գաղափարէն աւելի շահադիտութիւնն է որ կը տիրէ, և Սսոյ միաբան եպիսկոպոսներ և վարդապետներ, հարկաւ իրենց աղթարմայական միտումներէն աւելի, կը գրգռուէին գործերուն և պաշտօններուն և անոնցմէ քաղուելիք շահերուն ուրիշներու ձեռք անցնելէն։ Այս կէտին մէջ կը տեսնենք մենք, ներքին գժտութեանց և երկպառակութեանց աճիլը, որոնք յանգեցան Պօղոսի եղերական վախճանին, և ինքն ալ մէկը եղաւ այն վեց կաթողիկոսներէն, որոնց Սսոյ միաբանները թեպ մահու արժանացին և ի կենաց զատի հանին, և յատկապէս Պօղոսի վրայ ճշմարտուած կ'ըլլայ անտեղի բարուրանքներով ինքզինքնին արդարացնելնին, ջողայ անողորմայ դընելով ի վերայ նոցին (ԿՈՍ. 55)։ Պօղոսի մահը վերջին հարուածը եղաւ հայրապետական աթոռին համար, որուն թերեւս դարման մը բրած ըլլար, եթէ աւելի ապրէր, և եթէ իւր ձեռնարկը չարունակուէր։ Ընդհակառակն աղթարմայութեամբ խմորեալներ նորէն տիրացան, և գեղծումներ բաց ասպարէզ առացան, և այլեւս յայտնուեցաւ թէ յոյս ու ճար չկայ հայրապետական աթոռը իւր աղետալի վիճակէն ազատել, բայց եթէ ազատելով զայն այն խառնակ մթնոլորտէն որուն մէջ կը մնար։ Դժբախտաբար գրեթէ անհնար էր անմիջապէս ձեռնարկել, զի Արեւելք ամբողջ անտանելի տագնապի մէջ էր Գարաքոյունլու Իսքէնտէրին երեսէն, և ոչ միայն գործելը, այլեւ մտածելն իսկ հնար չէր, հայրապետական աթոռին հոգածու գտնուելու։ Այս էր իրաց վիճակը 1430 թուականին, որ Պօղոսի երկոտասանամեայ կաթողիկոսութեան վերջինը եղած է, ինչպէս բացատրեցինք (§ 1414)։

# Տ. ԿՈՍՏԱՆԴԻՆ Զ. ՎԱՀԿԱՑԻ

ՎԱՀԿԱՑԻ ԵՒ ՆԱՂԱՃ

**1427.** Նորէն Կիլիկեցիք կը տիրանային հայրապետական աթոռին, զոր ձեռք կը ձգէր իրենց գլխաւորներէն Կոստանդին եպիսկոպոս ընիկ Վահկայ բերդէն, և ձգտումով նախաձեռնակ, ու միջոցներով հարուստ, ու հնարագիտութեամբ ճարտար անձ մը, թերեւս նաեւ գլուխ ու վարիչ Պօղոսի դաւաճաններուն։ Իւր ուղղութիւնը ճշդելու համար կրնանք հիմնուիլ այս վերջին պարագային, ինչպէս նաեւ նկատի առնել Լատիններու մօտենալու կամքը, և Փլորենտիոյ ժողովին հետ յարաբերութիւնը, որչափ ալ գործին առաջին շարժումը իրմէ բղխած չըլլայ։ Հետեւաբար աղթարմայութեան, թէ ոչ նա-

խանձայոյզ մը, գոնէ համակիր մը եղած ըլլալը կը յայտնուի։ Ասոր հետ մէկտեղ պէտք է ընդունինք, թէ այդ մասին ալ մեծ գործունէութիւն ունեցած չէ, քանի որ միւս կողմէն Մկրտիչ Նաղաշ վարդապետի հետ նախորդ մտերմութիւն ունէր, և անոր հանդէպ յարգանք կը տածէր, որ է ըսել թէ հայադաւանութեան սէրը իր սիրտէն բոլորովին հեռացած չէր, իսկ Նաղաշի աղ-թարմայութենէ հեռու մէկ մը եղած ըլլալը յայտնի է։ Բնիկ Բաղէշի մօտիկ Պոռ գիւ-ղէն էր Նաղաշը, Առաքել մեծատուն քա-հանայի որդի, Յովհաննէս վաղամեռիկ քա-հանայի, և Աբգար մեծատուն տանուտէրի եղբայր, թէպէտ ողայութենէ կրօնաւորու-թեան փափաքող, սակայն ամուսնանալու պարտաւորուած էր։ Կնոջը առաջին ծննդա-բերութեան առթիւ այրիանալով, եկեղե-ցականութեան կը մտնէր, նկարչութեան և ճարտարապետութեան արուեստներէն ալ չհրաժարելով։ Որոշակի ըսուած չէ թէ ո՛ր աշակերտութենէ էր, այլ Տաթեւի աշակեր-տած ըլլալը չյիշուիր, իսկ 1418'ին, դեռ սարկաւագ եղած ատեն Պռոայ Ս. Անանիա, այժմ Ս. Յովհաննէս վանքը գտնուած կը տեսնուի (ՆԱՂ. Է.), իսկ վարդապետու-թիւնը Ամիդի մէջ անցուցած է, և 1430'ին նոյն քաղաքին եպիսկոպոս ձեռնադրուած է, նոր ընտրուած Վահկացի կաթողիկոսէն (ՀԱՑ. 572)։ Մկրտիչ շատ ազդեցիկ դիրք մը ունեցած է Միջագետքի մէջ, իր կարո-ղութեամբ և յաջողակութեամբը, բայց ա-ւելի Աքքօյունլու Օսմանի սիրելի ըլլալովը, որով ամէն տեսակ արտօնութիւններ ստա-ցած է քրիստոնէից համար, եկեղեցիներու նորոգութիւն, եկեղեցականներու ապահար-կութիւն, համարձակ պաշտամունք, և գե-րիներու ու նեղուածներու ազատութիւն։ Իր գլխաւոր շինութիւններն եղած են, Արղնիի Բարձրահայեաց վանքը 1433'ին և Տիարպէքիրի Ս. Թէոդորոս կաթողիկէն, որ անազան աւարտեցաւ 1439'ին (ՀԱՑ. 573)։ Բարեբախտ պիտի ըլլայինք եթէ Վահկա-ցիին մասին ալ նմանօրինակ տեղեկութիւն-ներ հասած ըլլային, մինչ ընդհակառակն իր օրով եւաքանգնեւս յառաջացաւ Սսոյ հայրապետանոցին քայքայումը, և կաթո-ղիկոսական աթոռին անկումը, որ Հայ եկե-ղեցւոյ ուղղափառութեան և հաստատու-թեան նախանձայոյզ վարդապետները ստի-պեց վերջնական դարմանին դիմել, և Կի-լիկիոյ մթնոլորտէն հեռացնել հայրապետու-թիւնը, և զայն վերադարձնել իր սկզբնա-կան տեղը, լուսաւորչահիմն Էջմիածինը, որ թէպէտ արտաքին և քաղաքական տեսակէ-տով նախանձելի բախտ մը չունէր, գոնէ անտախեղծ պահած էր հայադաւան ուղղա-փառութեան սկզբունքը։ Պօղոսի սպանու-թիւնը և Կոստանդինի յաջորդելը մեծապէս ցնցած էին Արեւելեայց միտքերը, և հար-կաւ անմիջապէս ալ գործի ձեռնարկած կ'ըլ-լային, եթէ պարագաները ներէին։

**1428.** Տագնապալից էր կացութիւնը, ամէն կողմ սուր ու հուր, աւեր ու աւար կը տիրէր Գարաքօյունլու Իսքէնտէրին երեսէն։ Ա-

ԻՍՔԷՆՏԷՐ
ԵՒ ՃԻՀԱՆՇԱՀ

րալի, Իսքէնտէրի որդին և Վանայ իշխանը, անի-րաւութեանց չափը անցընելուն, հօրմէն եւ կոչուեցաւ, բայց նա Շամախիի իշխան Խա-լիլուլլահին ապաւինեցաւ, որ Արալին Շահ-ռուհ մեծ խանին ղրկեց, և այս պատճա-ռով Իսքէնտէր Շամախի յարձակեցաւ 1434'ին, և որոյ ճարակ եղ հրկիզեալ անտառ ճանապարհաց շրջակայն, և քաղաք ու գիւղ, ծառ ու այգի, ամէն բան ջնջեց, անդադրելի աւերը գործելով Շամախիէ անցաւ յաղթական Դարբանդով, անողորմ որոխողելով տանելով գերե-նեալս և շղթայակապս, և ամ մի լման այդ ապստամբը չարունակեց, և անհագին աւա-րով և գլուխներու բեռներով Սիւնեաց եր-կիրը դարձաւ 1435'ին, ուր Յակոբ Շամա-խեցի քահանայն կրցաւ քրիստոնեայ գերի-ները ազատել (ՄԵԾ. 100)։ Շահռուհ ուզե-լով Իսքէնտէրը պատժել անթիւ և անհամար բազմութեամբ Սուլտանիան պաշարեց, և անկէ Երզնկայ եկաւ, ուր Իսքէնտէրի մայրն Խանում ու եղբայրը ծիհան խոստացան Շահռուհի Իսքէնտէրը սպաննել, բայց նա յաջողեցաւ փախչիլ Կոգովիտ գաւառի Արծափ գիւղը, և անկէ Կարինի վրայ քա-լեց, ուր Աքքօյունլու Օսմանի հետ զար-նուեցաւ, և զայն սպաննեց և գունդերը ջարդեց, ու գիակները դիզելով. ինքն յա-ռաջացաւ դէպ Աբշէհիր և Թօքաթ։ Շահ-ռուհի որդին Ջօնգայ, որ կը հետապնդէր՝

եռեւէն չհասաւ, իսկ Շահռուհ պատուեց ու Շահ անունմեց Իսքէնտէրի ծիհան կամ Ջահան եղբայրը, որ իրեն հպատակութիւն էր յայտնած (ՄԵԾ.103)։ Միւս տարի 1436'ի գարունին Իսքէնտէր իւր ապստամբը նորոգեց, Սեբաստիոյ շրջակայքը քանդեց, այրի մը մէջ ապաւինած Հայերէն՝ երիկ մարդիկը անօրէնք պղծագործք տանջեց, և կին ու տղայ գերի տարաւ, Տիվրիկէ ծանր փրկանք գանձեց, Խարբերդը սրով և հրով աւերեց, Դերջանի ժողովուրդը ճանպայ հանեց իբր գերի ձիուն ձմեռին, և երբ գրտահարմներու բազմաթիւ մահերը կ'իմացընէին, ծիծաղելով ասէր. Աստուած արար, զի՞նչ փոյթ է ինձ (ՄԵԾ.105)։ Բան զարմանալի ասել մարդիկ փախեալ էին Իսքէնտէրի երեսէն, որ 1437'ին եղբօրը ծիհան Շահի վրան քալեց, բայց իրեններէն լքուելով Երնջակի բերդը ապաւինեցաւ, ուր իւր իսկ մայրը Խանում և Շահաբաթ որդին, և 10 օրէն և աւել ա-նօթութեան զինուորներ զինքն սպաննեցին երբ ի տուն էր արբեալ ի գինւոյ, և գլուխը ծիհան Շահին տարին։ Եւ խաղաղութիւն եղև կը յաւելու պատմիչը (ՄԵԾ.107)։ Ըսած էինք վերեւ (§ 1422) թէ պարագայք չներեցին Հայաստանի վարդապետներուն Սսոյ աթոռին գործովը զբաղիլ, ուստի քաղուածօրէն տուինք վերջին տարիներուն անցքերը, որ մեր խօսքը կը հաստատեն։

**1429**. Դժբախտութեանց չարքը լրացնելու համար յիշենք նաև Օրբելեանց վերջանալը։ Այդ ազգատոհմէն մնացած էր միայն Պելգին իշխան, Պեղգին (ՄԵԾ.117) և Պեչգին ալ գրուած (ՄԵԾ.134), որդի Սմբատ իշխանին, այն որ Տաթևացիին պաշտպանութիւն էր ըրած (§ 1357), կեղծուրաց ալ եղած, և նորէն դարձած (§ 1406)։ Պելգին միակ Հայ իշխան մնացած էր Արևելեան գաւառներէ, ձեռն մի ի մէջ ողկուզոյ, և ոտն մի ի խաւար գեհենի (ՄԵԾ.119), ընդ գերիշխանութեամբ Վրաց Ալեքսան թագաւորին, որ Սիւնեաց նահանգն ալ իրեն հնազանդեցուցած էր։ Սակայն Ալեքսան Հայոց նկատմամբ համակիր չէր, և կը վախնար մի՛ գուցէ Հայեր Պելգինի չուրջը ժողովեսցին, և ապաւէն լիցին կողման Վրաց։ Ուստի կը մտադրէ զայն սպաննել տալ, և Ամիրազին անուն Հայ մըն ալ կը վարձէ, որ տայ տեղ մահու ի ժամ կերակրոյն։ Պելգին կը զգայ, դեղթափ ալ կ'առնէ, բայց օգուտ չունենար և կը մեռնի։ Ալեքսանի և Ամիրազինի գործին մէջ կրօնամոլութեան հետք մըն ալ կը նշմարէ պատմիչը, թէ ազգն Քաղկեդոնական չկրցաւ տանիլ զԹագաւորն ազգին, աղաղակաւ և հծծմամբ հառաչելով (ՄԵԾ.118)։ Ալեքսան այս կերպով Օրբելեանց տէրութիւնը վերջացուց, որոնց նախապէս Լօռի դղեակն ալ առեր էր։ Պելգինի եղբայր Շահ, փոյթ չունեցաւ հայրենի գաւառին տիրանալ, իսկ որդին տասնամեայ մեռաւ, և Հայ իշխաններու վերջին հետքն ալ ջնջուեցաւ 1438'ին։ Միայն Պելգինի աւագանին անոր վրէժը լուծեց, Ամիրազինը ծայրակոտոր արարեալ յոտից և ի ձեռաց (ՄԵԾ.121)։

**1430**. Ալեքսան 1439'ին չարաչար և աննհանդուրժելի ցաւերով հիւանդացաւ, և 1440 Զատկին օրը, մարտ 27'ին ծիհանշահ եկաւ ու Վրաց Շամշուլտէ քաղաքը պաշարեց, և անհամար թուով գերի վարեց, որոնք մինչև ի Մուշ և ի Խորասան և ի Պաղտատ և ի Տաճկաստան և յամենայն երկիր ցրուեալ ցնդեցան (ՄԵԾ.121), իսկ Հայաստանի քրիստոնեայք այնքան աղքատցած էին որ մին տաղտ և մին գինւոյ գերի մի գնել ոչ կարէր (ՄԵԾ.122)։ Վրաց թագաւորութեան իյնալովը քրիստոնէից յետին յոյսն ալ ջնջուեցաւ, և մք, կ'ըսէ Մեծոփեցին, որ հանապազ յոյս ի Վրացիսն ունելով գործէաք, յայնմանէ յուսահատեցաք, առաջի անօրինաց ոտնակոխ եղաք (ՄԵԾ.123), և այդ վերջին աղէտքին վրայ ողբով կը փակէ իւր պատմութիւնը։ Ծիհանշահ այս կերպով բոլոր Հայաստանի և Կովկասի բացարձակ տիրապետողը դարձաւ, և թէպէտ քրիստոնէից վրայ հարկերը խստացուց, գոնէ պատերազմի խռովութիւնները վերջացան, և երկիրը համեմատաբար հանդարտ վիճակ մը ստացաւ, որով ուրիշ գործերով ալ զբաղելու հնարաւորութիւն ներկայացաւ։ Ծիհանշահ այդ կողմերուն վրայ մարզպան կամ ընդհանուր պետ դրաւ իւր Հասան-Ալի որդին, որ աթոռը հաստատեց Նախիջեւան, և անոր ձեռքին ներքև կուսակալներ նշա-

*նակուեցան՝ Վան, Երեւան, Տփղիս, և ուրիշ գաւառներ, ղէյ կամ ղէկ կամ բէգ կոչմամբ, և ատոնցմէ մէկն էր Երեւանի Եաղուպ պէյը, որուն անունը պիտի յիշենք աթոռի փոխադրութիւնը պատմած ատեննիս։*

**ԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԵՐՁՈՒԱԾԸ**

**1431**. *Այժմ պէտք է անցնինք կարեւոր կէտ մը լուսաբանել, որ է Հայոց կողմէ Լատինաց Փլորենտեան ժողովին յղուած պատուիրակութիւնը, և անոր ձեռքով կատարուած գործողութիւնը։ Սակայն գործին լիակատար բացատրութեան համար անհրաժեշտ կը դատենք կողմնակի տեղեկութիւններ տալ Լատիններուն և Յոյներուն կացութեան վրայ։ Կղեմէս Ե պապ իւր աթոռը* 1309'*ին Հռոմէ փոխադրած էր Գաղղիոյ Աւինիոն քաղաքը, ուր աթոռը մնաց մինչեւ* 1377, *եօթը պապերու ժամանակ, մինչեւ որ Գրիգոր ԺԱ նորէն Հռոմ հաստատուեցաւ, բայց քիչ ետքը մեռաւ* 1378 *մարտ* 26'*ին, և երկու պապեր միանգամայն ընտրուեցան, Ուրբանոս Զ Հռոմի մէջ և Կղեմէս Է Աւինիոնի մէջ։ Այսպէս սկսաւ* Արեւմտեան հերձուած *կոչուած պառակտումը։ Ուրբանոսի յաջորդեցին Վոնիփակիոս Թ* 1379'*ին, Իննովկենտիոս Է* 1404'*ին, և Գրիգոր ԺԲ* 1406'*ին, իսկ Կղեմէսի յաջորդեց Բենեդիկտոս ԺԳ* 1394'*ին։ Հերձուածին վերջ տալու համար գումարուեցաւ Պիսայի* (Pisa) *ժողովը, Իտալիոյ մէջ,* 1409 *մարտ* 26'*ին, երկու պապերն ալ չճանչնալու սկզբունքով, զորս յունիս* 5'*ին* հերձուածող և հերետիկոս *հռչակեց, և յունիս* 26'*ին ընտրեց Աղեքսանդր Ե պապը։ Այս ընտրութիւնը ուրիշ արդիւնք չունեցաւ, բայց եթէ երրորդ պապ մըն ալ աւելցնել, և թէպէտ Աղեքսանդր Ե* 1410'*ին մեռաւ, բայց իրեն յաջորդեց Յովհաննէս ԻԳ, և իւր աթոռը Բոնոնիոյ* (Bologna) *մէջ հաստատեց։ Միեւնոյն միջոցին նորաղանդութիւնն ալ սկսած էր Արեւմուտքի մէջ, որուն նախահայրը եղաւ Յովհաննէս Վիքլէֆ* (John Wickliff) *Անգղիացին* 1374'*ին, և իրեն յաջորդեց Յովհաննէս Հուս* (Johan Huss) *Գերմանացին* 1403'*ին, հետեւապէս հերձուածին խնդիրին՝ հերետիկոսութեան խնդիր մըն ալ կը կցուէր Եւրոպայի մէջ, բայց մենք այդ եղելութեանց չենք հետեւիր։ Երրակի հերձուածը վերջացնելու համար գումարուեցաւ Կոստանդիոյ* (Gonstanz) *ժողովը Հելուետիոյ մէջ* 1414 *նոյեմբեր* 5'*ին, և* 1415 *ապրիլ* 6'*ին իւր նշանաւոր վճիռը արձակեց թէ ժողովի իշխանութիւնը պապական իշխանութենէն վեր է։ Ժողովը մինչեւ* 1418 *իւր նիստերը շարունակեց,* 1415 *մայիս* 29'*ին Յովհաննէս ԻԳ'ը դատապարտեց,* 1415 *յուլիսին Գրիգոր ԺԲ'ի բռնազբօսեալ հրաժարականը ընդունեց,* 1417 *յուլիս* 26'*ին Բենեդիկտոս ԺԳ'ը կրկին մերժեց, և վերջապէս* 1418 *նոյեմբեր* 11'*ին Մարտինոս Ե'ը պապ ընտրեց։ Հերձուածը պաշտօնապէս դադրած եղաւ, բայց խռովութիւնները շուտով չդադրեցան։ Գրիգոր ԺԲ քիչ ետքը մեռաւ* 1417'*ին* 91 *տարեկան, Յովհաննէս ԻԳ, որ* 1415'*ին բանտարկուած էր՝ երեք տարիէն մեռաւ* 1418'*ին, իսկ Բենեդիկտոս ԺԳ իբր պապ ապրեցաւ մինչեւ իրեն մահը* 1424'*ին, և իրեն յաջորդեց Կղեմէս Ը, որ իւր դիրքը պահեց մինչեւ* 1429, *այլ հետզհետէ լքուելով ստիպուեցաւ հրաժարիլ և Մարտինոս Ե'ի հնազանդիլ։ Կոստանդիոյ ժողովը որոշած էր պարբերաբար ընդհանուր ժողովներ գումարել իբր իրարու շարունակութիւն, և ըստ այսմ առաջինը գումարուեցաւ Իտալիոյ Պաւիա* (Pavia) *քաղաքը* 1423 *մայիսին, բայց վերահաս ժանտախտին պատճառով յունիսին Իտալիոյ Սիէնա* (Siena) *քաղաքը փոխադրուեցաւ, և լոկ հերետիկոսութեանց գործերով զբաղելով փակուեցաւ* 1424 *փետրուար* 26'*ին։ Այդ մանրամասնութիւններ մէկ կողմէն կը հաստատեն թէ Լատիններուն եկեղեցական դրութիւնն ալ Հայերու կացութենէն շատ չէր տարբերեր, և միւս կողմէն մեզ կ'առաջնորդեն Փլորենտիոյ ժողովին իսկութիւնը ճշդելու։*

**ԲԱՍԻԼԻՈՅ ԺՈՂՈՎԸ**

**1432**. *Մարտինոս Ե նոր ժողով հրաւիրեր էր* 1431 *փետրուար* 1'*ին, Հելուետիոյ Բասիլիա* (Basilea *կամ* Basel) *քաղաքը մարտ* 3'*ին բացուելու պայմանով, սակայն ինքը փետրուար* 20'*ին մեռաւ և մարտ* 3'*ին ընտրուեցաւ Եւգինէոս Դ։ Այդ պարագաներ յապաղեցին ժողովականաց շուտով հաւաք-*

ուխը, և 1431 դեկտեմբեր 14'ին առաջին նիստը գումարուեցաւ, մինչ անդին պապը դեկտեմբեր 12'ին հրաման կը հանէր ժողովը յետաձգել և 18 ամիսէն բանալ Բոնոնիա քաղաքը, ուր ինքը կը գտնուէր։ Բասիլիոյ ժողովականները չհաւանեցան և 1432 փետրուար 15'ին կրկնեցին Կոստանդիոյ ժողովին վճիռը, թէ պապական իշխանութիւնն ալ ժողովականին ենթարկուած է, և Եւգինէոսի առաջարկեցին յետաձգման հրամանը ետ առնուլ։ Եւգինէոսի չհամակերպելուն վրայ 1432 դեկտեմբեր 18'ին իրեն 60 օր պայմանաժամ նշանակեցին, և նոյնը կրկնեցին 1433 յուլիս 13'ին, պաշտօնանկութեան սպառնալիքով։ Ասոր պատասխան Եւգինէոս սեպտեմբեր 13'ի կոնդակով Բասիլիոյ ժողովականներուն որոշումները կը ջնջէր, բայց ինքն ալ տագնապալի վիճակ մը ունէր Բոնոնիոյ մէջ, թէ քաղաքական հակառակութիւններուն և թէ իրեններէն լքուելուն երեսէն։ Այս պատճառով ստիպուեցաւ Բասիլիոյ ժողովականներուն հետ հաշտուիլ, ինչ որ տեղի ունեցաւ 1434 ապրիլ 24'ին, և յունիս 26'ին անգամ մըն ալ հռչակուեցաւ Կոստանդիոյ վճիռը ժողովներու գերիշխանութեան վրայ։ Եւգինէոս դժգոհ այդ ելքէն, բայց և ստիպեալ հարկին հնազանդիլ, պատեհ գտաւ օգտուիլ իւր ազդեցութիւնը զօրացնող պարագայէ մը, որ յանկարծ կը ներկայանար Յոյներուն կողմէ։ Օսմանեանց սուլտան Մէհէմմէտ Ա'ի (§ 1412) յաջորդած էր որդին Մուրատ Բ 1421'ին, և երկուքին ձեռքով Յունական կայսրութեան Ասիական և Եւրոպական բոլոր երկիրները Օսմանեանց իշխանութեան ներքեւ անցած էին, այնպէս որ Կոստանդնուպոլիս այլեւս ամէն կողմէն թշնամիէն շրջապատուած, և յոյժ անձուկ սահմաններու մէջ ամփոփուած էր։ Յովհաննէս Ը Պալէոլոգ կայսր, որ 1425'ին հօրը Մանուէլ Բ'ի յաջորդած էր, գահակալութենէն անմիջապէս ետքը, ծանր պայմաններով տասնամեայ հաշտութիւն մը կնքեց Մուրատի հետ, բայց և այնպէս միշտ երկիւղի մէջ էր։ Արեւմուտքէ գատ ուրիշ կողմէ օգնութիւն մը չյուսալով, և այդ օգնութեան համար դաւանական միութեան պայմանին անհրաժեշտ ըլլալը գիտնալով, հարկաւ Ղալաթիա (Calata) արուարձանին մէջ հաստատուած Գենուացիներէ ալ յորդորուելով, ուղղակի Եւգինէոս պապին դիմեց 1433'ին, և սա ալ նոյն տարւոյ յուլիսին Քրիստափոր Կարաթօնի (Cristo˜oro Garatoni) քարտուղարը յղեց բանակցութեան սկսելու։ Յովհաննէս կայսր կ'առաջարկէր Կոստանդնուպոլսոյ մէջ գումարել միութենական ժողովը, որուն Եւգինէոս համամիտ էր, և Բասիլիոյ ժողովը ցրուելու միջոց կը նկատէր (ՊէՂ. Ա. 275), մինչ Բասիլիոյ ժողովականք, որոնց ալ յատուկ պատգամաւորներ յղած էր Յովհաննէս կայսր՝ Եւրոպիոյ մէջ կ'ուզէին։ Այն առեն Եւգինէոս իւր եղած Բոնոնիան առաջարկեց, իսկ կայսրը ծովեզերեայ Անկոնա (Ancona) քաղաքը կը նախադասէր։ Բանակցութիւնք երկարեցան մինչեւ 1436, և այդ միջոցին ժողովը կանոնական գործերով զբաղեցաւ, առանց աչքէ վրիպեցնելու Յոյներն ալ, զորս իրեն կողմը ձգել կ'աշխատէր, Բասիլիան կամ Աւինիոնը կամ Սավոյիան իբրեւ ժողովատեղի առաջարկելով. իսկ կայսրը, որ Եւգինէոսի և ժողովականաց մէջ ազդուագոյն կողմը կը փնտռէր, վերջապէս ժողովականներէն բաժնուեցաւ և Եւգինէոսի յարեցաւ։ Ասոր վրայ պապը սկսաւ աւելի խրոխտաբար վարուիլ Բասիլիոյ ժողովականաց հետ, ժողովականք ալ բացարձակ ընդդիմութիւն հռչակեցին։ Պապ ու կայսր համաձայնեցան Իտալիոյ Փերրարիա (Ferrara) քաղաքը գումարուիլ, որուն վրայ Եւգինէոս 1438 յունուար 1'ի կոնդակով Բասիլիոյ ժողովը լուծեալ հռչակեց, և փետրուարի 8'ին ժողովը բանալ տուաւ, 27'ին ինքն ալ գնաց, մարտ 4'ին Յովհաննէս կայսրը եկաւ, և 7'ին ալ հասաւ Կոստանդնուպոլսոյ Յովսէփ պատրիարքը, եկեղեցական հետեւորդներով, ապրիլ 9'ին հանդիսութիւն կատարուեցաւ, բայց ժողովական գործողութիւններ մինչեւ հոկտեմբեր 8 յետաձգուեցան, Լատիններէն շատերուն յապաղելուն պատճառով։ Եւգինէոս իւր յաղթութիւնը կատարեալ կը կարծէր, բայց Բասիլիոյ ժողովականք չէին զիջաներ։ Փերրարիայի ժողովը ապօրէն հռչակեցին, Բիտրուրգիոյ (Bruges) կանոնք կոչուած՝ Գաղղիական եկեղեցւոյ սահմանադրութիւ-

նը հաստատեցին, որ պապական իշխանութեան նպաստաւոր չէր, 1439 յունիս 25'ին Եւգինէոսը գահընկէց հրատարակեցին, և նոյեմբեր 5'ին նոր պապ մըն ալ ընտրեցին Սավոյիոյ Ամեդէոս Ը (Amedeo VIII di Savoia) հրաժարեալ իշխանը, որ Փելիքս Ե կոչուեցաւ։ Ուրիշ մանաւոր կարգադրութիւններէ ետքը 1443 մայիս 16'ին ժողովը փակեցին, որ ամբողջ 12 տարի տեւած էր, և որուն հեղինակութեան մասին Լատիններն ալ իրենց մէջ համաձայն չեն, և հինգ վեց տեսակ կարծիքներ կազմուած են (ՊԵՆ. Ա. 292), որոնք մեզ չեն հետաքրքրեր։

**1433**. Մեզի հարեւոր էր գիտնալ թէ ինչ հոգւով, ինչ նպատակով, և ինչ պարագաներու ներքեւ գումարուած է յունալատին միաբանութեան ժողովը, որուն այնչափ կարեւորութիւն կու տան հռոմէադաւանք, և զոր մեր ազգային եկեղեցւոյն վրայ ալ տարածել կը ջանան։ Յոյներ եկած էին Օսմանեան վերահաս գրաւումէն ազատուելու, և որեւէ արտաքնայարդար պայմանով օգնութիւն մը ստանալու համար։ Իսկ Եւգինէոս կ'աշխատէր որեւէ ձեւի տակ Արեւելքի վրայ ազդեցութիւն տարածելով՝ իր անձնական թշնամիները ընկճել։ Ահա տեղերական բռնուած ժողովոյ հեղինակութեան հիմը, և հաւատոյ դաւանական վճիռ կոչուած որոշումը։ Փերրարիոյ մէջ 1438 հոկտեմբեր 8'էն, մինչեւ 1439 յունուար 10, տասնըվեց նիստեր գումարուեցան, Ֆիլիոքուէ յաւելուածին վրայ վիճելով, բայց քաղաքին մէջ ժանտախտ ճարակած ըլլալուն՝ միակամ հաւանութեամբ փոխադրուեցան մերձակայ Փլորենտիա (Firenze) քաղաքը, ուր փետրուար 26'ին առաջին նիստ մը գումարեցին։ Հոգւոյն Սրբոյ ի յՈրդւոյ բղխման խնդիրը շարունակեց մինչեւ յունիս 8, և վերջապէս միջասահման բանաձեւով մը փակուեցաւ։ Պատարագի հացին և սրբագործութեան և հանդերձեալ Մաքրարանի խնդիրներն ալ փոխադարձ զիջողութեամբ փակուեցան, բայց պապական իշխանութեան կէտը ծանր ընդդիմութեանց բաղխեցաւ, իրեն գործնական ձեւերուն

**ՓԼՈՐԵՆՏԻՈՅ ԺՈՂՈՎԸ**

մէջ։ Յոյները բաւական կը սեպէին Հռոմի աթոռը առաջին ըսել, մինչ Լատիններ անոր ընդարձակ նախաձեռնութիւններ կու տային, հանգանակին յաւելուածներ ընելու, իւրովի տիեզերական ժողով հրաւիրելու, առանց ուրիշ պատրիարքներու զայն գումարելու, պատրիարքները իր առեանը բերելով դատելու, և նմաններ, զորս Յոյներ չէին ընդունիր, և Յովսէփ պատրիարքին յունիս 12'ին վախճանելուն վրայ, Յոյն եպիսկոպոսներ մեկնելու կը պատրաստուէին։ Սակայն կայսրն ու պապը միտքերնին ուրիշ նպատակներ ունէին, Յովհաննէս որեւէ կերպով Լատինաց օգնութիւնը ապահովել կ'ուզէր, Եւգինէոս Բասիլիոյ ժողովականաց առջեւ տկարանալ չէր ուզեր, որոնք ճիշդ այն օրեր, յունիս 25'ին (§ 1432), զինքն գահընկէց կը հռչակէին։ Միտքերնին տարբեր, բայց նպատակնին համամիտ, կայսր ու պապ միացան, և ստիպողական ու չահեցողական ամէն միջոց գործածելով, և որոշ բացատրութեանց տեղ դիւրաթեք բանաձեւներ ընդունելով, բայց միշտ բաւական դժուարութիւններով՝ միութենական վճիռ մը գիրի առնել և ստորագրել տուին յուլիս 5'ին, և 6'ին երկուշաբթի օր հանդիսապէս հրատարակեցին Փլորենտիոյ մայր եկեղեցւոյն մէջ։

**1434**. Այն հաւատոյ գիրին մէջ (ՄՆՍ. ԼԱ. 1025) նկատելի կէտերն են։ Նախ պապը իր կոնդակը կը հաստատէ հաւանութեամբ կայսեր, և արեւմտեան պատրիարքաց (ՄՆՍ. ԼԱ. 1026) ընդարձակ կերպով կը բացատրէ թէ Հոգւոյն Սրբոյ բղխման մասին Լատիններուն ի Հօրէ և յՈրդւոյ, և Յոյներուն ի Հօրէ Որդւով բանաձեւները նոյն իմաստ կը յանգին, և կ'ընդունի էբր ի միոյ սկզբանէ վարդապետութիւնը (ՄՆՍ. ԼԱ. 1030)։ Պատարագի և մաքրարանի մասին երկաքանչիւր եկեղեցիները իրենց սովորութեանց մէջ կը թողու։ Իսկ պապական իշխանութեան մասին խօսուած ատեն կ'ընդունի Յոյներուն պահանջած պայմանները, թէ այն կ'իմացուի, Ինչպէս որ տիեզերական ժողովներուն վճիռներուն և եկեղեցական կանոններուն մէջ կը պարունակուի։ Եւ թէ Ամբողջապէս պէտք պահուին պատ-

**ՓԼՈՐԵՆՏԻՈՅ ՎՃԻՌԸ**

[illegible] (ՄՆՍ. ԼԱ. 1034)։ Այդ բանաձեւներով Յոյն եպիսկոպոսներ կը կարծէին իրենց դրութիւնը ազատած ըլլալ, իսկ Լատիններ կ՚ուրախանային որեւէ կերպով Յոյներու վրայ առաւելութիւն ստանալ։ Եւգինէոս Բասիլիականաց վրայ յաղթանակ տարած կ՚ըլլար, և Յովհաննէս իւր կայսրութիւնը ապահոված կը կարծէր։ Կայսրը յուլիս 6՚էն ետքը իւր դիտած գործնական արդիւնքը կը պահանջէր, սակայն Եւգինէոս չունէր այն ազդեցութիւնը որ Եւրոպիոյ բանակները Օսմանեանց դէմ շարժէր։ Կայսրը յուսախաբ իւր ակնկալութեանց մէջ, բաւական ատեն դեռ Փլորենտիա մնաց, որ նպատակը իրագործէ, սակայն տեսնելով որ բան մը չարտադրուիր, և ընդդիմադիր եպիսկոպոսներու դիտողութիւններէն ցաւելով, միութենական որոշումէն յիսուն օր ետքը, օգոստոս 26՚ին բոլոր Յոյներով Փլորենտիայէ մեկնեցաւ դէպի Կոստանդնուպոլիս, ուր հասաւ 1440 փետրուարի առջի օրը։ Միայն երկու Յոյն եպիսկոպոսներ ետեւ մնացին, որոնք սիրտով համմէկադաւանութեան յարած էին, Բեսարիոն (Bessarione) Նիկիոյ և Իսիդորոս Կիէվի (Kiev) արքեպիսկոպոսները, որոնք կարդինալութեան աստիճանով վարձատրուեցան։

ԳԵՆՈՒԱՑԻՆԵՐ ԵՒ ՀԱՅԵՐ

**1435**. Յոյներուն մեկնելէն օր առաջ Փլորենտիա կը հասնի Հայ պատգամաւորութիւնը, և կայսրը հազիւ թէ զայն ողջունելով Փլորենտիայէ կը մեկնի (ՄՆՍ. ԼԱ. 1046)։ Բայց մենք պէտք է ետ դառնանք պատգամաւորութեան ծագումը պատմելու։ Այդ միջոցին ծաղկեալ Հայ գաղթականութիւն մը կը գտնուէր Խրիմի Կաֆա քաղաքը, որուն ծագումը կը կապուի Զարմագանի արշաւանքներուն (§ 1113), և Անի քաղաքի փախըստականներուն հետ։ Ասոնք առաջին անգամ բնակեցան Ախսարայ։ Աժտէրխանի և Ղազանի մօտերը, ուր հասած կ՚ըլլան շուրջ 1235՚ին։ Երբ 1261՚ին Յոյն կայսրներ Կոստանդնուպոլիսը Լատիններէն ետ առին, օգնութիւն գտած էին Գենուացիներէն, որոնք Վենետիկցիներու և Պիզացիներու հետ կը մրցէին ծովի տիրապետութեան և առեւտուրի ընդարձակութեան համար։ Միքայէլ Պալէոլոգ կայսր իբր երախտագիտութեան պարտք, Գենուացիներուն (Genovesi) տուաւ Կոստանդնուպոլսոյ հանդիպակաց ծովեզերքը, որ Ղալաթիա կամ Կալաթա կը կոչուի այժմ, անշուշտ իտալերէն Calata անունով, ինչպէս կը կոչուին ցարդ Գենուայի և Սավոնայի և շրջակայ Լիգուրեան նաւահանգիստներու քարափները։ Կոստանդնուպոլսէ դուրս Գենուացիք մեծ կեդրոն ունէին Խրիմու Կաֆա քաղաքը, և առեւտրական կայարաններ, Զմիւռնիոյ, Քիոսի, Միտիլէնի և ուրիշ քաղաքներու մէջ։ Քրիստոնեայ իշխանութեան մը Կաֆայի մէջ մերձաւորութիւնը՝ Ախսարայի Հայերուն տեղափոխութեան փափաքը շարժեց, և Կաֆայի Գենուացիներէ հաւանութիւն ստանալով, և դիմադրող Թաթարներու հետ պատերազմելով, եկան հաստատուիլ Կաֆա 1330՚ին, և հետզհետէ ընդարձակուեցան նոր գիւղեր ալ շինելով և շէնցնելով և բազմաթիւ եկեղեցիներ կանգնելով (ՀԱՑ. 581)։ Այդ թուականէն դար մը անցած էր, և շատ զարգացած էր Հայոց դիրքը Գենուացւոց պաշտպանութեան ներքեւ, սակայն բարի դրացիութիւն և բարեացակամութիւն շահելու նպատակները, Կաֆայի Հայերուն մէջ մերձաւորութիւն ու հակամիտութիւն մը ստեղծեցին դէպի լատինականութիւն, որ ոչ բոլոր հայաբնակութեան հաւասար, և ոչ ալ կատարեալ և պաշտօնական կերպով էր, և մաս մը միայն մինչեւ ունիթորական յանձնառութիւններ հասած էր և երեք վանքեր ունէր, ինչպէս յիշեցինք (§ 1394)։ Ուրիշ մաս մը Կիլիկեցւոց ոճով աղթարմայական զիջումներու կը միտէր, և վերջապէս ճշմարիտ հայադաւան մաս մըն ալ կար, միշտ տիրապետողներու հետ լաւ յարաբերութիւններ պահելու զգուշաւորութեամբ։ Երբ որ 1433՚ին Յովհաննէս կայսր Եւգինէոսի դիմեց (§ 1432), և միութենական դիտումը յայտնեց, պապին միտքը ծագեցաւ միեւնոյն փորձն ընել ուրիշ Արեւելեան եկեղեցիներու հետ ալ, որոնք Հռոմի հետ յարաբերութիւն չունէին, որպէսզի տեսակ մը դաշնակցական միութեամբ իւր դիրքը

զօրացնէ, և Բասիլիականաց կողմը տկարացնէ, որոնք աւելի ազդեցութիւն ունէին Գերմանական, Գաղղիական և Սպանիական երկիրներու մէջ։ Սակայն Բասիլիոյ ժողովականք ալ Եւգինէոսի գաղափարը հակակշռելու համար, իրենք ալ իրենց կողմէն, ոչ միայն կայսեր, այլ և ուրիշներու ալ նոյն հրաւէրը ուղղեցին, ինչպէս կ'երևի Կոստանդնուպոլիս գտնուող Յովհաննէս և Եսայի Սսոյ եպիսկոպոսներու նամակէն, զոր ուղղած են Բասիլիոյ ժողովականներուն 1433 սեպտեմբեր 30'ին (ՄՆՍ. Լ. 642), ուր կ'ակնարկեն ժողովին կողմանէ կայսեր ուղղուած գրութեան և ղրկուած պատգամաւորութեան։ Մենք արդէն յիշած ենք Բասիլիոյ ժողովին Յունաց հետ միութեան խնդիրով զբաղիլը (§ 1432)։ Բայց Եւգինէոս իրեն կուսակից և օգնական ունէր Իտալացիները, և յատկապէս Գենուացիները և Վենետիկցիները, որոնք ընդարձակ և ազդեցիկ յարաբերութիւններ ունէին Արևելքի մէջ, և իրենց ձեռնտուութիւնը ընծայեցին Եւգինէոսի, անոր հրաւիրագիրները կամ դիմումները հասուցին Հայերուն, Եթովպացիներուն, Ասորիներուն, Քաղդէացիներուն և Մարոնիներուն, և ձեռուրներնէն եկած միջամտութիւնը գործածեցին յօգուտ պապութեան, բայց մենք պիտի ամփոփուինք Հայերուն վերաբերեալ կէտերով։ Ինչպէս Կաֆայի Հայերը, նոյնպէս Կոստանդնուպոլիս գտնուողներն ալ Գենուացւոց ազդեցութիւնը կը կրէին, ինչպէս կը կրէր Յունաց կայսրն ալ։ Այսու հանդերձ երկու եպիսկոպոսները յանձնառու չեղան միութեան բանակցութեան մտնել և գործը թողուցին կաթողիկոսին (ՄՆՍ. Լ. 642)։ Այդ պատասխանին վրայ Եւգինէոս ուղղակի Կոստանդին կաթողիկոսի անունով գիր մը գրեց, որ Եսայի եպիսկոպոսի ղրկուեցաւ տեղը հասցնելու համար։ Նամակը ղրկուած է Կոստանդնուպոլիս, և ոչ Երուսաղէմ (ՋԱՄ. Գ. 473), ինչ որ յարմար ուղեգիծ մըն ալ չէր։ Շփոթութիւնը յառաջ եկած է, Եսայիի նոյն միջոցին Երուսաղէմի Մարտիրոս պատրիարքին աթոռակից ըլլալէն (ԲԱՌ. 48), ինչպէս որ Եսայի ալ կը ստորագրէ։ Պապին նամակը, Աքղլմսեհ սարկաւագի ձեռքով Սիս ղըրկուեցաւ, և Եսայի ըստ այսմ 1434 նոյեմբեր 1'ին պապին պատասխանեց, ուր պապին պատուիրակ Քրիստափոր Կարաթօնիի հետ ալ տեսակցած ըլլալը կը յիշէ (ՄՆՍ. Լ. 867)։

**ՊԱՊԱԿԱՆ ՀՐԱՒԷՐԸ**

**1436.** Հայերը հռոմէադաւան ցուցնելու մարմաջով բռնուած գրողներ, նորօրինակ տրամաբանութիւն մը ունին։ Շողոքորթ գովասանքները՝ հաւատոյ դաւանութիւն կը մեկնեն, միութեան փափաք ցուցնող յայտարարութիւնները՝ կատարուած իրողութիւն կը ցուցնեն, անհատի մը կամ խումբի մը բռածին ու գրածը՝ եկեղեցւոյ ամբողջութեան կը վերագրեն, և այս կերպով Հայ եկեղեցւոյ նկարագիրին և իսկութեան վրայ վճիռ կ'արձակեն։ Ներկայ պարագայիս մէջ ալ, Կոստանդին կաթողիկոսը, Սսոյ աթոռը, Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոսը, Երուսաղէմի պատրիարքը, Կիլիկիոյ ժողովուրդը, Կաֆայի գաղութը, կատարեալ հռոմէադաւաններ ցուցնելու ճիգեր կ'ըլլան։ Արդ եթէ այս այսպէս էր և ամէնքը պապութեան հպատակներ էին, հապա ինչ էր պապին կողմէն զանոնք միութեան կոչելու հրաւէրը, զի ոչ թէ միացեալներու, այլ միացեալ չեղողներու կրնար ուղղուիլ այդպիսի առաջարկ մը։ Պապին հրաւէրին հանդէպ Կոստանդնուպոլիս եղող եպիսկոպոսներ գործը կաթողիկոսին կը թողուն, կաթողիկոսն ալ չաճապարեր համաձայնութիւն յայտնելու, այլ մինչև Տիարպէքիր կը գրէ, և խնդիրն ու թուղթը հաղորդելով՝ Մկրտիչ Նաղաշ եպիսկոպոսին կարծիքը կ'ուզէ, որուն աղթարմայութեան դէմ անձ մը ըլլալը յայտնի էր (§ 1427)։ Օրինօք չարժուելու համար պէտք էր որ Վահկացին Սիւնեցի և Վասպուրականցի վարդապետական կեդրոններուն ալ գրէր, այլ չմոռնանք որ Գարաքօյունլու Իսքէնտէրին չհաստատութեանց միջոցն էր (§ 1428), և կ'երևի թէ Վահկացին հազիւ Տիարպէքիրի հետ հաղորդակցելու հնարաւորութիւնն է ունեցեր։ Նաղաշին կարծիքը առաջարկին հակառակ եղաւ. հայադաւան ուղղութեան հաւատարիմ մնալով՝ քաղկեդոնիկ դաւանութեան չուզեց համակերպիլ, և հազիւ

*Կոստանդինի նամակը ստանալէն տարի անցնելէն ետքը, 1436 մայիս 16'ին պատասխան գրեց, որ միութենական բանակցութեանց մտնելու համար պէտք էր որ դիմացինները միանգամ ընդ միշտ քաղկեդոնական դաւանէ դուրս կանգնին* (ՁԱՄ. Գ· 474)։ *Այս առթիւ Նաղաշ՝ Լատիններէն զատ Յոյներն ալ կը յիշէ, զի պապական առաջարկէն զատ կայսերական յորդորն ալ կար ի նպաստ միութեան։ Եթէ Եւգինէոս պապ իւր ներքին տագնապէն ազատելու ոյժ կը փնտռէր, Յովհաննէս կայսրն ալ արտաքին տագնապէն ազատելու օգնութիւն կը սպասէր։ Նաղաշի պատասխանին վրայ բարձիթողի մնաց հրաւէրին խնդիրը, որ մեծ նշանակութիւն ունի աղթարմայութեան խմորով չփոխուած կաթողիկոսի մը համար, և Եւգինէոսի* 1434'*ին գրած նամակը մինչև* 1438 *անպատասխանի մնաց։ Այդ պարագայն կը բաւէ հաւաստել թէ Հայեր, և նոյն իսկ Սսոյ աթոռը, ոչ միայն կատարեալ համէական չէին, այլ և ոչ այնպէս ըլլալու միտում ունէին. ապա թէ ոչ, ինչչափ ալ ծանր ըլլային քաղաքական պայմանները, չորս տարուան լռութեան պատճառ մը չկար, և ինչպէս գիրը գացած էր, պատասխանն ալ կրնար դառնալ։*

ՀԱՅ ՊԱՏՈՒԻՐԱԿՆԵՐԸ

**1437**. *Միութենական խնդիրը և Հայերու եղած առաջարկը նորէն ձեռք առնուեցաւ, երբ Ֆերրարիոյ ժողովը սկսաւ գումարուիլ* 1438 *տարւոյ սկիզբը* (§ 1432)։ *Այս անգամ պապէն նոր նամակ չգրուեցաւ, կաթողիկոսին կողմէն ձեռնարկ մը չեղաւ, Կիլիկիոյ մէջէն շարժում չսկսաւ, այլ գործին կեդրոնը Կաֆա եղաւ, և գործին մղումն տուողներն եղան Պօղոս Իմբէրիալի* (Paolo Imperiali), *Կաֆայի Գենուացի կառավարիչը, և Լուչինօ Ֆացիօ և Կալէդօ Կրիմալտի* (Lueino del Fazio, Galeto dei Grimaldi), *անոր օգնականները* (11· ԱՄՍ· 461)։ *Գենուացիք են ուրեմն, օտարազգի և օտարադաւան անձինք, որոնք մէջտեղ ինկած են Եւգինէոսի տագնապին օգնութիւն հասցնել, և Հայ պատգամաւորութիւն մը ղրկելով Փլորենտիա, անոր յաղթանակը պատրաստել Բասիլիականներու դէմ։ Գենուացի կառավարիչն ալ կը վկայէ, թէ ինքն յեռնօրէնց վոռփէն Հայերը* (11· ԱՄՍ· 464), *և յայտնի է թէ վոռփէն բացատրութիւնը ինչ նշանակութիւն ունի իշխանաւորի մը բերանը։ Հայերը համակերպութեան ստիպուեցան, և Լատիններ ամէն ծախք ընելու պատրաստակամութեամբ և ամէն դիւրութիւն ընծայելու խոստումով* 1438 *մայիս* 12'*ին թուղթ մը ստորագրել տուին Կաֆայի Մաղաքիա եպիսկոպոսին և քահանայական դասուն և գլխաւոր աշխարհականներուն, և ընդարձակապան հանելով նամակը հասուցին Կոստանդնուպոլիս, և անկէ Սիս, այնպէս որ* 70 *օրէն, յուլիս* 25'*ին Կոստանդին կարող կ'ըլլար պատասխանել թէ՛ ազգայիններուն և թէ՛ հիւպատոսին։ Կաֆացիներէ գրուած նամակին մէջ լսուած էր, որ կամ Գենուա, կամ պապին, կամ սինհոդոսին մէկը ղրկուի ֆերէ ջեղօն յօհօռ օմնայն +րէօռնէէց, և կ'ուզէին որ կաթողիկոսը նշանակէ զայն, իսկ եթէ մերժէ կամ մինչև երեք ամիս յապաղէ, ինքն հիւպատոսն պիտի ղրկէր վորջողեռ մը ընջորյոք էջխոնոբեոմբ* (11· ԱՄՍ· 461)։ *Անկէ զատ դաւանական միաբանութեան կամ հաւատոյ սկզբանց նկատմամբ որոշ խօսք մը չկայ նամակին մէջ։ Կաթողիկոսն ալ իր պատասխանին մէջ կը յիշէ թէ Եմանեսիոս եպիսկոպոս մը եկած է իրեն, պապին պատուիրակին և Գենուացի կառավարիչին նամակներով* (ՊԼՃ· 260), *որով կը յայտնուի թէ Լատին պատուիրակութիւն մըն ալ եկած էր նամակին հետ, Կոստանդինի վրայ ստիպում գործելու համար։ Իսկ Կոստանդին բաւականացած է չորս անձեր նշանակել նոյն իսկ Կաֆայի մէջէն, որք են Սարգիս վարդապետ, որ Կաֆացւոց արքեպիսկոպոս և Կոստանդինի ոնջրոնէլ՝ այսինքն առաջին ձեռնադրեալ եպիսկոպոսը կը կոչուի* (ՊԼՃ· 260), *թէպէտ վերև Մաղաքիա յիշատակուեցաւ իբր Կաֆայի եպիսկոպոս, և Մարկոս ու Թովմաս վարդապետներ և Յովակիմ Հալէպի եպիսկոպոսը, որ երթան և ղըրօրէնօյ եղէն ժոբոն ոօոըբն Սեղբեօտըսօ և ոօոըբն Գըէէօըէօօ, այսպէս միաբանին է ի ռողողոբէոն, է օէը և է ժօոբէոն* (ՊԼՃ. 261)։ *Արդ այս խօսքերը հոգևոր սէրէ աւելի բան մը չեն նշանակեր, և մոլորութենէ*

*դառնալու վրայ չեն կրնար մեկնուիլ, բայց եթէ Լուսաւորիչն ալ մոլորութենէ դարձած ըսելով: Կաթողիկոսը նոյն կերպով կը գրէ հիւպատոսին ալ, Ինչպէս որ Սուրբ Հոգին պէտք լուսաւորէ անոնց միտքը, այնպէս թող փորձեն, որպէս զի սէր և միաբանութիւն և եղբայրութիւն ըլլայ ի մէջ քրիստոնէից* (11·ԱՄՍ·463): *Կաթողիկոսը ո՛չ հաւատոյ վրայ, ո՛չ պապի իշխանութեան, ո՛չ համէականութիւն ընդունելու, և ոչ մոլորութիւններ մերժելու վրայ կը խօսի, խաղաղութենէ և եղբայրսիրութենէ անդին չանցնիր, որ կերպով մը Լատիններու մոլեռանդութեան յանդիմանութիւնն է, վասնզի Հայերու վրայ կրկնամկրտութիւն իսկ ընելու կը համէին* (11·ԱՄՍ·465): *Պապին ուղղուած գիր իսկ չի տար, և պատիւ և յարգանք կամ հպատակութիւն յայտնող յայտարարութիւն մը չի գրեր, որուն երբեք ազահ չէին Հայ կաթողիկոսները, և ոչ ալ հրահանգ մը կը գծէ իւր պատգամաւորներուն: Գենուացի կառավարիչը կը գրէ պապին, թէ պատգամաւորութիւնը կու գայ յանուն բովանդակ ազգին* (11·ԱՄՍ·464), *սակայն ինքն է ըսողը, կաթողիկոսին գիրերուն մէջ սանկ իմաստ մը չկայ: Վերջապէս բոլոր իրողութիւնները սախպման վրայ եղած դիջողութեան մը կը վերածուին: Կաֆայի Հայեր Գենուացիներէ սախպուած կը կրեն պատգամաւորութիւն մը ղրկել, և Կոստանդին վեհերոտ և անորոշ ձևով գոհացում մը կու տայ, որ Կաֆացիները իրենց տէրերէն չի նեղուին: Անոնց համէական չըլլալուն կը վկայէ համէադաւանութեան մեծ ախոյեանն ալ, թէ Քեֆէի Հայերն իրենց եպիսկոպոսով Հռոմէն անջատեալ էին* (11·ԱՄՍ·453): *Մենք կ'ուզէինք ընդունիլ թէ Կաֆայի մէջ տակաւին մնացած էր ունիթորական խումբէն մաս մը իւր վանքերով և՝ իւր յատուկ եպիսկոպոսով, սակայն այս չափով Կաֆան համէադաւան չէր ըլլար, ինչպէս այսօր ալ մաս մը Հայ կաթոլիկ գտնուիլը Հայոց ազգը կաթոլիկ չըներ:*

**1438**. *Այդ պայմաններու ներքև ճանպայ կ'ելլէ Կաֆայէն՝ չորս վարդապետներէ կազմուած Հայ պատգամաւորութիւնը, բայց պատգամաւորութեան առաջնորդ կը նշանակուի, Յակոբ Բրիմատիցի* (Jacobus de Primatitiis) *լատին կրօնաւորը, յատկապէս այդ գործին համար Բոնոնիայէ պապին կողմէն ղրկուած, երկու ուրիշ լատին ընկերներով, որք են Փրանկիսկոս Բոնոնիացի և Լուդովիկոս Բոնոնիացի* (Francesco da Bologna, Luigi da Bologna), *երեքն ալ Փրանկիսկեան միաբանութենէ: Այդ լատին Յակոբն է, որ պիտի ըլլար Հայերուն գլխաւոր առաջնորդ, և Հայերու սէրը բոլորովին անոր յետը պիտի ըլլար, և ասոնց անոր կարող պէտք ըլլային քահանայապետին ներկայանալ* (11·ԱՄՍ·464): *Աւելի պարզ խօսելու համար, գացող Հայ վարդապետները խրտուիլակ պիտի ըլլային, և լատին կրօնաւորներ գործը պիտի կարգադրէին: Կառավարիչն Իմբէրիալի յանձնարարութիւնը կատարած և գործը լրացուցած ըլլալուն ուրախ, 1438 դեկտեմբեր 1'ին պապին ուղղած նամակով մը ճանպայ կը հանէ կէս Լատին և կէս Հայ պատգամաւորութիւնը, որ առաջ Կոստանդնուպոլիս կը հանդիպի, անկէ Վենետիկ, անկէ Փլորենտիա կ'ուղևորի, ուր կը հասնի 1439 օգոստոս 25'ին* (§ 1435), *երբ տիեզերական կոչուած ժողովը՝ իւր գործը երկու ամիս առաջ լրացուցած էր, և Յոյներն ալ մեկնելու վրայ էին: Եւգինէոս իւր Լատիններով ներքին գործեր կարգադրելու կը շարունակէր, և սեպտեմբեր 4'ին հերձուածող և հերետիկոս կը հռչակէր Բասիլիոյ ժողովականները՝ որ իրեն դէմ գահընկէցութեան վճիռ արձակած էին: Հայերու հետ ինչ բանակցութիւններ եղան, ինչ դումարումներ տեղի ունեցան, ինչ խնդիրներ յուզուեցան, ինչ պայմաններ առաջարկուեցան, և ինչ տեսակ ընդունելութիւն յայտնուեցաւ, ասոնք ամէնքը մեզի անծանօթ կը մնան, զի այդ մասին ժողովական տեղեկութիւններ և արձանագրութիւններ չեն գտնուիր: Միայն Հայերուն հասնելէն շուրջ երեք ամիս ետքը, 1439 նոյեմբեր 22'ին, Եւգինէոս իւր անունով կոնդակ մը կը հրատարակէ, հասարակ կոնդակներու ձևով, և Ցնծացէք առ Աստուած օգնական մեր, աղաղակեցէք առ Աստուած Յակոբայ, սկզբնաւորութեամբ* (ՄՆՍ·ԼԱ·1047), *որ ոչ ժողովական կանոնի ձևն ունի, և ոչ Հայ պատ-*

*պատգամաւորներուն նախապէս տուած ստորագրութիւնները կը կրէ։ Այս պատճառով Լատինները ալ սովորաբար Հրահանգ առ Հայս անունով կը ճանչնան և կը նշանակեն այդ կոնդակը, որով ժողովական հեղինակութիւն տուած չեն ըլլար։ Միանգամայն մեծ խնդիրներու նիւթ կ'ընեն զայն, վասն զի ոչ միայն ձեւին կողմէն ժողովական հեղինակութեան պայմաններուն չպատասխաներ, այլ և պարունակութեան կողմէն ալ նշանաւոր անճշդութիւններ ունի, զորօրինակ ձեռնադրութեան խորհուրդին մէջ միայն գործիքներու տուուչութիւնը յիշելով, զանց կ'ընէ ձեռաց դրութիւնը, որ խորհուրդին էական կէտն է, և առանց որոյ ձեռնադրութիւնը անվաւեր կ'ըլլայ։ Ամէն առթի մէջ, պատմութեան ամբողջացման նպատակով հարկ կը սեպենք այդ պաշտօնագիրն ալ վերլուծել։*

**1439.** *Կոնդակին սկիզբը մեծամեծ խօսքերով կը հռչակուի, թէ 900 և աւելի տարիներէ իվեր բաժանուած Հայոց եկեղեցին՝ այս անգամ Հռոմի հետ կը միանայ։ Արդ եթէ հռոմէադաւանները Եւգինէոսի հեղինակութիւնը կը յարգեն, պէտք է ընդունին թէ ասկէ առաջ միութիւն եղած չէ, մինչ իրենք քանի քանի անգամ կատարուած միութիւններ կը պաշտպանեն։*

**ՀՐԱՀԱՆԳ ԱՌ ՀԱՅՍ**

*Եւգինէոս կը յիշէ, թէ Հայեր անձուկ փափագանօք միաբան, առաքեցին մեզ պատգամաւորս նշանաւորս, բարեպաշտօնս և իմաստունս, լիազօր իշխանութեամբ ճոխացեալս, որք եկին ի հեռաւոր աշխարհաց բազում նեղութեամբ և ծովային վտանգօք* (ՄՆՍ.ԼԱ.1049), *մինչ մենք տեսանք թէ եկողները Կաֆացիներ են, Գենուացւոց ստիպմամբ բերուած, և ոչ Սսոյ հայրապետանոցէն և կաթողիկոսէ ղրկուած անձեր, և թէ պատգամաւորութեան գլուխները Լատիններ են* (§ 1438)։ *Այս յառաջաբանին վրայ կը սկսի յատուկ գլուխներով Հայերուն առաջարկել ընդունելու կէտերը։ Առաջինն է Քրիստոսի և Հոգւոյն Սրբոյ աստուածութիւնը երեք ժողովներու համեմատ։* 2. *Երկու բնութեանց վարդապետութիւնը։* 3. *Երկու կամաց վարդապետութիւնը։* 4. *Քաղկեդոնի ժողովին և Լեւոնի պապին ուղղափառութիւնը և Հռոմէ ճանչցուած բոլոր ժողովներուն ընդունելութիւնը* (ՄՆՍ.ԼԱ.1050—1054)։ 5. *Մի առ մի կը մեկնէ եօթը խորհուրդները, իւրաքանչիւրին նիւթն ու ձեւը ու պաշտօնեայն ու արդիւնքը բացատրելով, ու գրեթէ բառացի քաղելով Թովմաս Ակուինացիին գիրքէն, ուստի պէտք չենք զգար մանրամասնութեամբ յառաջ բերել այդ երկար յօդուածը* (ՄՆՍ.ԼԱ.1054-1059)։ *Մկրտութեան մէջ Ես մկրտեմ զքեզ ձեւը կը հրամայէ, բայց Մկրտի ծառայս ձեւն ալ չի մերժեր։ Դրոշմի մէջ բացարձակապէս եպիսկոպոսը կը ցուցնէ իբր պաշտօնեայ։ Հաղորդութեան մէջ բաժակին ջուր խառնելու համար Յայտնութեան տեսիլքէն վկայութիւն մը կը յարմարցնէ, Ջուրք բազումք, ժողովուրդք բազումք, սակայն բնագիրին մէջ գրուած է. Ջուրքն զոր տեսեր, ուր նստէր պոռնիկն, ժողովուրդք են* (ՅՅՏ. ԺԷ. 15)։ *Ապաշխարութեան խորհուրդին մէջ պաշտօնէին քահանայական ատուճանը անբաւական կը սեպէ, և յատուկ եպիսկոպոսէ տրուած արտօնութիւն ալ կը պահանջէ։ Վերջին օծումը պարզապէս Լատիններուն իմացածին պէս կը բացատրէ։ Ձեռնադրութեան մէջ զանց կ'ընէ ձեռաց դրութիւնը, և միայն գործիքներու տուուչութիւնները կը յիշատակէ։ Ամուսնութեան մէջ նիւթ և ձեւ և պաշտօնեայ չճշդեր, և ամուսնալուծութիւնը բացարձակապէս կը մերժէ։* 6. *Պարտաւորիչ կը հռչակէ Աթանասի Կանոն հաւատոյ դրութիւնը, և* 7. *Հայերուն ալ կը տարածէ Յունաց հետ յուլիս 6'ին հաստատուած միութեան գիրը։* 8. *Կը հրամայէ, որ Հայերն ալ Լատիններուն հետ տօնեն Աւետումը, Յովհաննու ծնունդը, Քրիստոսի Ծնունդն ու Թլփատութիւնն, ու Յայտնութիւնն ու Տեառնընդառաջը։ Վերջապէս կը յայտարարէ թէ Հայ պատգամաւորները, իրենց և կաթողիկոսին և ամենայն Հայոց անունով այդ ամէն կէտերը հաստատեցին, ընդունելով կամ մերժելով ինչ որ Հռոմայ եկեղեցին կ'ընդունի կամ կը մերժէ։ Սակայն ինչպէս ըսինք, յառաջագոյն կատարուած բանակցութիւններ և յայտարարութիւններ կը պակսին, և միայն Լատին պատգամաւորներուն համակերպելով՝ Հայ պատգամաւորներն ալ ընդունած կ'ըլլան։ Թէպէտև*

*Եւգինէոսի կոնդակին ներքեւ ստորագրած են վարդապետներէն ոմանք, և յանուն մեր և յանուն մեծի կաթողիկոսին մերոյ և ամենայն Հայոց կ'ընդունինք ըսած են, սակայն պէտք չէր որ այս ըսէին ուղղեա և ուղղափառնոց ձեր վկայէ յաւելուածով* (ՁԱՄ. Գ. 481), *զի ոչ թէ պատգամաւորներ ընդունելնին պարզէն պիտի իմանային, այլ պապը պատգամաւորներէն պիտի իմանար։ Հետեւապէս այդ յայտարարութիւնը՝ ստացութեան անդորրագիրէ աւելի ոյժ չկրնար ունենալ, քանի որ եթէ կանխորոշ ժողովական վաւերագիր մը գտնուէր, հարկաւ ժողովներու պաշտօնական հաւաքածոյին անցած կ'ըլլար, սակայն այսպիսի գիր մը ոչ արձանագրուած է, և ոչ ալ եղած է։*

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

**1440**. *Երբոր* 1439 *նոյեմբեր* 22'*ին Եւգինէոս իւր հրահանգը կը հրատարակէր և կը յայտնէր թէ Հայ պատգամաւորները կաթողիկոսին անունով իւր որոշումները կ'ընդունին, պատգամաւորներէ ներկայացուած կամ ներկայացնել կարծուած Կոստանդին Վահկացի կաթողիկոսը այլեւս չկար։ Նոյն* 1439 *տարւոյ ապրիլ* 20'*ին գրուած յիշատակարան մը կ'ըսէ, թէ տէր Կոստանդին հայրապետը յայսմ ամի փոխեցաւ առ Քրիստոս* (ՏԱՃ. 50), *ուրեմն նա մեռած էր* 1439 *տարւոյ սկիզբները, դեռ պատգամաւորները օգոստոս* 25'*ին Փլորենտիա չի հասած, և ինչ որ յանուն Կոստանդին կաթողիկոսի կը գործուէր, վաւերական հանգամանքէ զուրկ էր, թէպէտեւ առանց այս պարագայի ալ՝ Փլորենտիոյ գործողութեանց մէջ վաւերականութեան հիմնական պայմաններուն բացակայութիւնը ակներեւ էր։ Եւգինէոս որ* 1439 *դեկտեմբեր* 15'*ին Կոստանդին կաթողիկոսին կը գրէր, անոր ղրկած պատգամաւորներուն ետ դառնալուն առթիւ, հանդուցեալի մը ուղղած կ'ըլլար իւր գիրը։ Գիր մըն ալ կ'ուղղէր Կաֆացիներուն, վասն զի իսկապէս Կաֆայի գաղութին և ոչ բոլոր Հայ ազգին ներկայացուցիչները կրնային սեպուիլ եկողները։ Ցօղուածագիր մը այդ գիրը ուղղուած կ'ըսէ Քեֆէի կաթողիկէէց* (11. ԱՄՍ. 465), *բայց քանի որ ասկէ առաջ նա ընդունած էր, թէ 1433'էն շատ տարիներ յառաջ Քեֆէի Հայերն իրենց եպիսկոպոսով Հռոմէն անջատուել էին* (11. ԱՄՍ. 453), *անուղղակի յայտնած կ'ըլլայ, թէ Եւգինէոսի՝ Գենուացւոց միջնորդութեամբ Կաֆայի Հայոց հետ ունեցած յարաբերութիւնները, աւելի Կաֆայի մէջ գտնուող ունիթորական հաստուածին հետ էր, քան թէ բոլոր հայաբնակութեան հետ։ Պատգամաւորներ* 1439 *դեկտեմբերին Փլորենտիայէ մեկնեցան պապին առատ ընծաներով, որոնց արժանացած էին իրենց հլու համակերպութեամբ, և պէտք էր որ ձեռուընին եղած նամակն ու հրահանգը չիտակ տանէին Սիս, կաթողիկոսին յանձնելու համար, բայց այդպիսի բան մը ըրած չեն, այլ Կոստանդնուպոլիսէ չիտակ ուղղուած են Ղրիմ, և իջած Կաֆա՝ իրենց մեկնած տեղը, կատարուած գործերէն տեղեկութիւն տալու համար Կաֆայի Գենուացիներուն, որով ցուցած են թէ անունով միայն Հայոց կաթողիկոսին, իսկ իրօք Գենուացի կառավարիչին պատգամաւորներն են եղած, Լատին կրօնաւորներու գլխաւորութեան և առաջնորդութեան ներքեւ։ Այսպէս կը վերջանայ Փլորենտիոյ ժողովին գացող պատգամաւորութիւնը, Հայաստանի շրջանակէն դուրս կատարուած, և որուն շուրջը այնչափ կը դառնին հռոմէականներ, Հայոց եկեղեցւոյ Հռոմի հետ միաբանութեան վերջնական և պաշտօնական գործ մը ցուցնելու համար։ Մենք գործին ընթացքն ու պարագաները ու չարժանիքները բացատրեցինք, որպէս զի ընթերցողներուն դիւրին ըլլայ իւրովի եզրակացութեան յանգիլ։ Վերջին դիտողութիւն մըն ալ աւելցնենք։ Ենթադրենք պահ մը որ Կոստանդինի ըրածն ու ըսածն, և պատգամաւորներուն խօսածն ու գրածը՝ օրինական բաներ ըլլան, միթէ կրնա՞ր Կոստանդին Վահկացին, առանց խորհրդակցութեան և առանց ազգին համաձայնութեան, առանց ազգային ժողովի և առանց կանոնական պայմաններու, ինքն իւրովի, Լատիններէն եկած բատիպման վրայ, դաղթականութենէ չորս եկեղեցականներու յանձնարարութիւն տալով, Հայոց եկեղեցւոյ դրութիւնը այլայլել, դաւանութիւնը փոխել, և կացութիւնը փոփոխել։ Թէրեւս Լատիններ, որ իրենց եկեղեցւոյ պետին վրայ անսխալականու-*

*թեան և ամենակարողութեան ձիրքեր կ'ընդունին, այսպէս հաւանին, բայց ոչ Հայեր, որ այդպիսի ձիրքեր չեն ճանչնար իրենց եկեղեցւոյն պետին վրայ։*

**1441.** *Կոստանդին Վահկացիի մահուան պարագաները մակաբերելու համար, նորէն պիտի դիմենք Մեծոփեցիին ընդհանուր կերպով տուած ծանօթութեան, թէ Սսոյ վերջին վեց կաթողիկոսներէն, վերջին ալ տեղ մահտերէսցին* (ԿՈՍ. 55), *որ եթէ առաջիններուն վրայ ի լրոյ տեղեկութիւն ալ կարծուի, գոնէ վերջինին համար գիտակցօրէն գրուած տեղեկութիւն պէտք է ըսուի, վասնզի ոչ միայն ժամանակակիցի մը վկայութիւնն է, այլեւ գրուած է այն պարագաներու մէջ, երբ Մեծոփեցին իւր ուշնուրուշը Սսոյ գործերուն վրայ սեւեռած էր, և անոր ընթացքը կը զննէր։ Մեծոփեցին յանկարծ կերպով նոյնը կը հաստատէ, երբ ուրիշ տեղ կը գրէ, տէր Կոստանդին կաթողիկոսն Սսոյ գնաց առ Աստուած* (ԿՈՍ.63), *որ իւր մէջ հեգնական շեշտ մը ունի։ Վահկացիի անունը գովեստի արժանի բան մը չներկայեր, և իւր ժամանակը աւելի զօրացած պիտի ըլլան այն զեղծումները, զորս Մեծափեցին կը թուէ, և մենք արդէն քաղեցինք* (§1049)։ *Որչափ ալ աղթարմայութեան հակամէտ էր, սակայն իբր իրեն նպաստաւոր պարագայ մը պէտք է նկատենք Եւգինէոսի կողմէ եղած միութեան հրաւէրին, և Գենուացւոց ու Կաֆացւոց կողմէ եղած դիմումներուն հանդէպ վերապահութեան և զգուշաւորութեան դիրք բռնած ըլլալը* (§ 1437)։ *Իւր ժամանակին Կիլիկիոյ կացութեան վրայ շատ գրելու բան չունինք, զի իրարու դիրացի Իսլամ պետութեանց փոխադարձ պատերազմներն են եղածները, որ Սիսի կացութիւնը չփոխեցին։ Տաւրոսի և Ամանոսի մէջ հաստատուած Հայ բերդակալներէն մէկ մասն ալ անոնցմէ նուաճուեցաւ այդ միջոցին, և յատկապէս Կապանի բերդը 1435'ին* (ՍԻՍ. 561)։ *Օսմանեան սուլտան Մուրատ Բ. աւելի ընդարձակեց իւր աշխարհակալութիւնը դէպ արեւելք, և* 1436 *թուականը կրնայ նկատուիլ իբր սկիզբն Օսմանեան տիրապետութեան բուն հայաբնակ գաւառներու վրայ. մինչ ասկէ առաջ Հայերու վրայ տիրած էին, Փոքր-Ասիոյ գաղթականութեանց մէջ, և ոչ Փոքր ու Մեծ Հայաստանի վրայ։*

**1442.** *Վահկացիին մահուան դառնալով, անոր բնական վախճան ունենալուն իբր հաստատութիւն պէտք է նկատել՝ մահուանէն ետքը տիրող խաղաղութիւնն ալ։ Դավրիժեցին* 1437 *տարեթիւով տէր Յովսէփ կաթողիկոս մը կը դնէ* (ԴԱՎ. 336), *զոր Երեւանեցին ալ ընդունած է* (ՋԱՄ. 17), *և Չամչեան ալ Յովսէփ Գ. կաթողիկոս մը անցուցած է ցուցակին* (ՉԱՄ. ՑԱԻ. 92)։ *Սակայն Մեծոփեցին այս անունով մէկը չճանչնար, այլ Կոստանդինի մահը յիշելով, անմիջապէս վրայ կը բերէ, և Գրիգոր անուն եպիսկոպոսի տուեն կաթողիկոս* (ԿՈՍ. 63)։ *Նոյն ինքն Չամչեան ալ այլեւայլ տեղեր քաղելով գրած է, որ Յովսէփ էր անուանեալ, և նստեալ ամս եօթն, և թէ այլն բնաւ չընկալաւ զկաթողիկոսութիւն Սսոյ* (ՉԱՄ. Գ. 485), *այնպէս որ այսչափ գիտնալէն ետքը ցուցակի անցնելն ալ զարմանալի կ'ըլլայ։ Ազգին չընդունելուն իբրեւ բացայայտ նշան կը նկատենք* 1439'*ին գրուած յիշատակարանի մը տարօրինակ բացատրութիւնը ի հայրապետութեան Յովսէփայն* (ՓԻՐ. 118), *որպիսի ինչ ուրիշ յիշատակարաններու մէջ ալ տեսած է Չամչեան, ի հայրապետութեան մեծի տեառն որ էր ի Սիս, և խափանեցաւ՝ բացատրութեամբ* (ՉԱՄ. Գ. 486)։ *Սրդ այդ մանր տեղեկութիւնները իրարու մօտեցնելով, կրնանք հաստատել, թէ Դավրիժեցիէն Յովսէփի տրուած* 1437 *թուականը չկրնար երբեք նկատի առնուիլ, իբր Վահկացիին կաթողիկոսութեան վերջը, քանի որ Վահկացիին* 1438'*ին գործելը* (§ 1437), *և* 1439'*ին մեռնիլը* (§ 1440), *հաստատուն վկայութիւններով ճշդուած է։ Իսկ Յովսէփը պէտք է կաթողիկոսութեան թեկնածու, և ամէն միջոցները անխտիր գործածող մէկ մը ճանչնալ, որ ամենայն հաւանականութեամբ և ոչ իսկ եպիսկոպոս եղած է։ Նա իւր նպատակին հասնելու համար Վահկացիին կեանքին ալ դաւաճանած է, և թերեւս բռնի կերպով հայրապետանոցին ալ տիրացած է,*

ՎԱՀԿԱՑԻԻՆ ՄԱՀԸ

ՅՈՎՍԷՓԻ ՃՓՈԹՆԵՐ

*բայց Սսոյ հայրապետութենէն ընդունուած չէ, և եպիսկոպոսներն ալ օծումը ըլլացած են, և իրենց մէջ միանալով և ժողովուրդն ալ թեւ թիկունք առնելով, իրենցմէ մէկը կաթողիկոսական աթոռ բարձրացուցած են։ Այս կերպով անցած է 1439 տարւոյ Յեացորդը Վահկացիին մահուանէ ետքը, կատարելապէս անիշխանութեան և կաթողիկոսական աթոռին բռնաբարման միջոցը, որուն վրայ հնար չէ ընդունիլ բռնակալ Յովսէփի անունը, որով Յովսէփ Գ կոչուած՝ անգոյ կաթողիկոս կը դառնայ։*

**1443**. *Նահատակներու թիւը որ անցեալ տարիներու մէջ բաւական չատ եղած էր, նուազած է այդ միջոցին, և միայն Յովհաննէս Խլաթեցիի անունը կը գտնենք հին յիշատակներու մէջ։*

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԽԼԱԹԵՑԻ**

*Քսան տարեկան ժիր և առոյգ, գեղեցիկ և քաղցրերգակ երիտասարդ մըն էր Յովհաննէս, որ իր երգերով կը զուարճացնէր ժողովուրդը, եւս առաւել Սէյֆէտտին ամիրան, Խլաթի իշխանը, և հանտաղ խոյր տաւաջի Նորա (ՆՈՐ. 284)։ Իրեն կ'ընկերանար տաճիկ երգեցիկ աղջիկ մըն ալ, բայց Յովհաննէսի հետ մրցելով յաղթեալ մէնէր (ՆՈՐ. 292), և ասկէ ծագեցաւ ստորին նախանձ մը, և ամիրային կողմէ Յովհաննէսը ուրացութեան յորդորելու ջանք մը։ Վերջապէս ամիրան, 1439 տարւոյ առաջի օրերը անգամ մը առջեւը կանչելով, ստիպաւ կը պնդէ, և գրպարտութիւն ալ կ'աւելցնէ, թէ դու մուլէս երբեմն մեղօք ընդ Տամինչ խոյմն երգեցոյն, և կը հաւտեցնէ թէ պէտք է որ տաճկանայ և աղջիկը առնէ, որպէսզի կեանքը ազատէ (ՆՈՐ. 285)։ Յովհաննէսի մերժելուն վրայ, ամիրան կը հրամայէ բերդէն վար գլորել, բայց երիտասարդը դէմ կը դնէ, ասոր վրայ բրածեծ կ'ընեն և ոտք ու ձեռք շղթայի զարնելով կը բանտարկեն։ Գիշերը հրապոյր և սպառնալիք կը չարունակեն, մինչեւ որ Յովհաննէս կը տկարանայ, և կը խոստանայ ամիրային կամքը կատարել։ Առտուն Յովհաննէսը ձի հեծցնելով քաղաքին մէջ փառաւորութեամբ կը պտտցնեն, բայց քրիստոնեաներ կը ցաւին և կը սրտմտին, նոյն իսկ իւր ծնողքն ալ։ Այդ ցոյցերուն առջեւ Յովհաննէս կը զղջայ անմիջապէս, քահանաներուն կը դիմէ խոստովանելու և հաղորդուելու, բայց անոնք կը մերժեն խաղ ու կեղծիք նկատելով։ Յովհաննէս լացով ու ողբով իւր անկեղծութիւնը կը վկայէ, և վերջապէս Առաջաւորի բարեկենդանին եկեղեցի երթալով կը խոստանայ հինգ օրերը անսուաղ անցնել, որ վերջէն հաղորդուի։ Տաճիկները կ'իմանան, կերակուրի կը հրաւիրեն, կը մերժէ, ամիրային լուր կու տան, որ կը հրամայէ միջոց մը հանդարտ թողուլ մինչեւ որ թլփատուելու ստիպեն։ Այսպէս օրերը կ'անցնին մինչեւ Բուն Բարեկենդանի նախընթաց չաբաթ օրը։ Նոյն օրը վերջապէս զինքը կը ձերբակալեն և առեւան հանելու տարած ատեննին բերդէն անդին անցնիլ չուզեր, ուր յայտնած էր ուրացութեան հաւանութիւնը։ Քարէր և ֆայտէր կը հարուածեն ու կը վիրաւորեն, և դատաւորին լուր կու տան, և քարկոծելու հրամանը առանալով տարէր և ֆայտէր հայտուլ Զուրգեցին ղումնայն մարմին Նորա, և այնպէս կը սպաննեն նոյն տեղը։ Մարմինը կրակի կու տան, և միայն երեք օր ետքը կը ներեն քրիստոնէից Յեացորդները թաղել։ Նահատակութեան թուականը պիտի դնենք 1438 փետրուար 22, Կոստանդնուպոլսոյ ժողովի առնին չաբաթ օրը, կէս օրուան մօտ, ժամը 6'ին (ՆՈՐ. 298), որ տարին Առաջաւորն ալ կ'իյնար փետրուար 2'ին (ՆՈՐ. 292)։ Իսկ ձեռագիրներուն մէջ տեսնուած 1437 թուականը՝ նշանակուած տօնին չպատասխաներ, և չատ սովորական սխալանք մըն է թուատառերու փոխանակութիւնը ընդօրինակողներուն գրիչին ներքեւ։*

# Տ. ԳՐԻԳՈՐ Թ. ՄՈՒՍԱԲԷԳԵԱՆՑ

**ԱԹՈՌԸ ԿԸ ԳՐԱՒԷ**

**1444**. *Կոստանդին Վահկացի մեռած էր 1439'ին ապրիլէն առաջ* (§ 1441), *և նոյն տարւոյ Նոյեմբեր 7'ին շաբաթ օր, Կաֆայի մէջ գրուած յիշատակարան մը՝ Գրիգորը իբր կաթողիկոս կը յիշատակէ* (ՓԻՐ. 119), *յիշելով նաև նոյն քաղաքին կամ Հոնաց աշխարհին եպիսկոպոս Մաղաքիայի անունը, զոր արդէն մենք ալ յիշեցինք* (§ 1437)։ *Սակէ կը հետեւցնենք, թէ Գրիգոր կրցած էր ամառուան մէջ աթոռը գրաւել, քանի որ լուրը մինչեւ Խրիմ հասած էր, և Փլորենտիայէ դարձող պատգամաւորութիւնը դոնէ Կոստանդնուպոլսոյ մէջ լսած պիտի ըլլար, աթոռին պարապութեան վերջացած ըլլալը։ Ուստի եթէ պատգամաւորութիւնը բուն ամենայնի կաթողիկոսական կերպարան ունեցած ըլլար, պէտք էր նախ Սիս, և ոչ թէ Կաֆա երթար։ Միեւնոյն ամսաթիւերու բաղդատութենէն կը հետեւցնենք, թէ շատ երկար տեւած պիտի չըլլան Յովսէփի ոտնձգութիւնները և աթոռի չփոթութիւնները* (§ 1442)։ *Գրիգորի նախընթացը պատմուած չէ, և ծննդավայրն ալ ծանօթ չէ, և միայն ազգատոհմով կամ յաւ ևս հայրանունով անցած է պատմութեան մէջ* (ԴԱՎ. 336)։ *Մուսաբէգեանց կոչումին հնար չէ, տաճկական հնչմանը պատճառով տաճկական ծագում ալ տալ, այլ հարկաւ հայազգի Մովսէս իշխան մըն է, որ տիրող պետութեան սովորութեամբ Մուսա Բէգ կոչուած է։ Ասկէց կը հետեւի Գրիգոր կաթողիկոսին իշխանազուն մը ըլլալը, և այդ ծագումն ալ իւր զօրանալուն և աթոռը գրաւելուն պատճառն եղած կ'ըլլայ։ Գրիգորի նկարագիրին և արժանիքին համար, ընաւ նշանակութիւն չունի Կաֆացի Մաղաքիա աբեղայէն՝ «փոխան Գրիգորի Քաղկեդոնի և սոփեստաւորի և իմաստնոյն» գրուիլը* (ՓԻՐ. 119), *զի հեռուէ հեռու, հագիւ թէ անունը լսած՝ կաթողիկոսավայել ածականներ կը պատշաճեցնէ կաթողիկոս եղողին։ Մենք գիտենք միւս կողմէն, թէ Կոստանդինի սպանութիւնը, Յովսէփի ոտնձգութիւնը և Գրիգորի յաջողութիւնը, իսկոյն ցնցեցին Արեւելեան վարդապետները, որոնք այլեւս տենը հասած դատեցին, շատոնց իվեր յղացած միտքերնին գործադրելու, համոզուած ըլլալով թէ այլեւս աւելորդ էր Սսոյ աթոռին իւր տեղին վրայ բարեկարգուիլը, թէ անօտի ակնկալութիւն էր Կիլիկիոյ հայրապետանոցին վրայ վստահիլը, և թէ այլ ևս պատճառ մըն ալ չկար, որ հայրապետական աթոռը իւր պանդխտութիւնը շարունակէր, որուն միակ արդարացումը ազգային քաղաքական իշխանութեան Վաղարշապատէ դուրս ելած ըլլալն էր, և եկեղեցական իշխանութիւնն ալ շարունակեալ տեղափոխութիւններով անոր կը հետեւէր։ Կիլիկիա ոչ միայն քաղաքական տեսակէտով իւր նշանակութիւնը կորուսած, և շրջակայ իշխանութեանց ձեռք խաղալիք դարձած էր, այլ և եկեղեցական տեսութեամբ, անկարգ անկերպարան բան մըն էր եղած, ոչ ուսումն էր մնացած այնտեղ և ոչ օրէնք, վանքեր քայքայուած, վարդապետներ անարգուած, եկեղեցականութիւն ստորնացած, ուր ընդհակառակն Արեւելեան վիճակներու մէջ գնահատելի արժանիք կը ցուցնէին Տաթեւեան աշակերտները՝ Սիւնեցի և Վասպուրականցի կրկին ճիւղերով։*

**ՀԵՐՄՈՆԵՑԻ ԵՒ ՄԵԾՈՓԵՑԻ**

**1445**. *Այդ կրկին ճիւղերուն գլուխը կը գտնուէին Յովհաննէս Հերմոնեցի Սիւնիքի մէջ, և Թովմաս Մեծոփեցի Վասպուրականի մէջ։ Յովհաննէս է* «յԱնկեղեաց, ի վանոյ Հերմոնի» *կոչուած է, առաջին անգամ յիշատակուած տեղը* (ՄՆԾ. 50), *ուսկից կը հետեւի, ծննդեամբ Երգնկացի, իսկ առաջին կրթութեամբ Վայոցձորոյ Հերմոնի վանքէն ըլլալը, յետոյ Տաթեւացիին աշակերտած, և մեռնելէն անմիջապէս կամ քիչ առաջը անոր յաջորդած, ինչպէս գրեցինք* (§ 1404)։ *Այդ միջոցին, որուն վրայ կը խօսինք, նա* «էր վարժապետ և առաջնորդ» *ճանչցուածը* (ԿՈՍ. 52), *ինչպէս երբեմն կը ճանչցուէր* «վարժա-

ղեւոն Գրիգոր Տաթեւացին (ՄՆԾ. 59)։ Յովհաննէս Կոլոտիկ կամ Գոլոտենց մակդիր անունով ալ յիշուած է (ԿՈՍ. 78), սակայն ծագումն ու իմաստը պիտի դժուարանանք ճշդել, պէտք եղած բացատրութիւնը աւանդուած չգտնելով։ Հերմոնեցիին դիրքը և Տաթեւացիէն ժառանգած հոգին զինքն կը պատրաստէին գլուխ կանգնիլ մեծ և կարեւոր գործին, որուն առաջին գաղափարը կրնանք տանիլ մինչեւ Տաթեւացին, հետեւաբար պէտք է անոր տանք՝ չուրջը գտնուողներուն և բոլոր Հայաստանի նշանաւոր վարդապետներուն հետ խորհրդակցութեանց նախաձեռնութիւնը։ Ինչպէս որ նախապատրաստութիւնները վերջացնելէ ետքը՝ ինքն եղաւ, որ ամէն կողմ հրաւէրներ ցրուեց գալ և հաւաքուիլ ի խորհուրդն բոլոր և օգտակար։ Թովմաս Մեծոփեցին, զոր իբր պատմագիր յաճախ յիշեցինք, և զանազան եղելութեանց մէջ ունեցած մասնակցութիւններն ալ պատմեցինք, ծնած էր Բաջբերունեաց Ագովիտ գիւղաքաղաքը, որդի ազնուական Ստեփանոսի, և եղբայր Գորգի մելիքին, այսինքն քաղաքի իշխանին։ Հետզհետէ աշակերտած էր Մեծոփի և Սուխարի և Սալնապատի վանքերուն (ՏԱՇ. 418), որոնցմէ յետոյ փոխադրուեցաւ Տաթեւ 1406ին (§ 1397), և վերջապէս հաստատուած էր Մեծոփայ մէջ իբրեւ առաջնորդ սուրբ աթոռին (ՏԱՇ. 677)։ Տաթեւ երթալէն 35 տարիներ անցած էին, և Թովմաս վաթսունը անցուցած էր արդէն, բայց երիտասարդական ժրութիւն կը կրէր տակաւին, աթոռին փոխադրութեան ձեռնարկին գործունեայ վարիչը ըլլալու չափ։ Ինքն է որ կը գրէ թէ ի խնդիր եղեւ Էջմիածնի իշխանութեանն և կաթողիկոսութեանն Հայկազեան սեռին (ԿՈՍ. 62), և կը վկայէ իր նախաձեռնարկ ըլլալուն։ Հետեւապէս պէտք է ընդունիլ թէ գլխաւորապէս այս երկուքն էին Հերմոնեցին և Մեծոփեցին, որ գործին իրականացման համար կը խորհրդակցէին չարունակ։ Հերմոնեցին չուտով կրցած էր իր գաղափարին յանկուցանել Արեւելեան վարդապետները և եպիսկոպոսները, որոնք արդէն պատրաստ էին վերջ տալ Սսոյ աթոռին և վերարծարծել լուսաւորչանիստ Էջմիածինը, և որոնց մէջ աւելի աչքառու ազդեցութիւն կը վայելէին Արտազու կամ Մակուայ եպիսկոպոս Գրիգոր, և Հաւուցթառայ եպիսկոպոս Զաքարիա։ Աւելի ծանր էր Մեծոփեցիին աշխատութիւնը, որուն մասը չփման մէջ էր Աղթամարի վիճակներուն հետ, որ ինքզինքը Մեծ-Հայոց կաթողիկոս կը ցուցնէր, և Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը իրեն սեփական կը կարծէր։ Աթոռին վրայ կը գտնուէր Զաքարիա, Նահատակ Զաքարիայի և վերջին Դաւիթին եղբօրորդին, որ չփոթութեանց միջոցէ մը ետքը կրցած էր աթոռին տէր դառնալ, և օրինաւոր պաշտօնավարութեան ձեռնարկել (§ 1424)։ Մեծոփեցին յաջողեցաւ Զաքարիան ալ իր կողմը շահիլ, և Սիւնեցի ու Վասպուրականցի վարդապետներուն գործակից ընել Աղթամարցիներն ալ, անշուշտ Զաքարիայի աչքին ցոլացնելով, Աղթամարէ Էջմիածին անցնելու հնարաւորութիւնը։

**1446**. Շատ չահագրգիռ պատմութիւն մը ունեցած պիտի ըլլայինք, եթէ ժամանակին կատարուած բանակցութեանց և փոխանակուած տեսութեանց ու թղթակցութեանց վրայ կատարեալ տեղեկութիւններ գտնայինք, ուր տեսնուէին գործին մէջ գլխաւոր դեր վարողներուն զգացումները ու դիտումները, և իրարու հանդէպ մրցակից չարժումները։

ՇԱՐԺՈՒՄԻՆ ՇՈՒՐՋԸ

Մեծոփեցին Թովմաս, որ միակ ժամանակակից պատմողն է, երբ մինչեւ իսկ երազներն ու հանդիպումները իբր կարեւոր ինչ գիրի առած է, բոլորովին զանց րրած է գործիչները և գործին հանգամանքները պատշաճ կերպով ներկայել։ Իր գլխաւոր պատմութիւնն իսկ անարուեստ և ժամանակագրութեամբը չփոթ գրուած մըն է, և ինքն իսկ կը խոստովանի, թէ ծեր էի և յետ յիսուն ամաց կենաց, քան այսօրէն յետ և յառաջ գրեցի (ՄՆԾ. 44)։ Որչափ ևս առաւել անկեալ ոճ պէտք էր ունենային աթոռոյ տեղափոխութեան յիշատակարանին երեք հատուածները, որոնք զանազան ժամանակներ գրուած են, և այն ալ եօթանասնամեայ եղած ատենները, երբ աւելի ցրուած էր, քան թէ յիսնամեայ եղած ատենը։ Այսու հանդերձ մենք նախընթաց և հետեւորդ եղելութիւնները և մանր ակ-

նարկները նկատի առնելով, պիտի աշխատինք փութկոտել մեկնաբանել գործին և գործիչներուն հոգեբանական հանգամանքներն ալ, քանի որ ազգային եկեղեցւոյ պատմութեան համար, նշանաւոր հանգրուան և կենսական ձեռնարկ մըն է հայրապետական աթոռին Սիսէ Էջմիածին փոխադրուիլը։ Անտարակոյս է որ մարդկային գործերու մէջ, որչափ ալ բարձր տեսութիւններ և վսեմ գաղափարներ անոնց նշանակութիւնը մեծցնեն, անձնական և կողմնակի զգացումներ չեն դադարիր համընթաց քալել հանրային գործերուն հետ։ Մենք բաւական կը սեպենք որ գոնէ անձնականները հանրականներուն վրայ չտիրապետեն՝ և հանրականներուն էութիւնը չեղծանեն։ Անհաւատալի պիտի ըլլար ըսել, թէ Արևելեայք բնաւ մասնաւոր և անձնական օգուտ չունէին այդ փոխադրութեան մէջ, որ պիտի զօրացնէր իրենց կողմը և իրենց ձեռքը պիտի անցնէր եկեղեցւոյ ուղղութիւնն ու վարչութիւնը։ Մասնաւոր օգուտ մըն ալ կրնային յուսալ գործին գլուխ կանգնողները, Ամենայն Հայոց բարեկարգեալ աթոռին գահակալն ըլլալով, և այդ ակնկալութիւնը նախապէս կը գրգռէր Զաքարիա Աղթամարցին, և նոյնը ունէին նաև Գրիգոր Արտազեցին, Զաքարիա Հաւուցթառեցին և Յովհաննէս Հերմոնեցին։ Միայն Թովմաս Մեծոփեցին այդպիսի մտածմունք չունէր, բայց անոր սրտին մէջն ալ Վասպուրականցիներուն նախապատուութիւն ստանալուն յոյսերը կ'աճէին, թէ՝ Աղթամարի կաթողիկոսը իրեն հետ ունենալովը, և թէ անոր վարդապետներէն և եպիսկոպոսներէն շատերը շահած ըլլալովը։ Այսպէս էր Արևելեան վարդապետներուն կացութիւնը 1439'ին վերջերէն սկսելով, և մեծ ոգեւորում ստացած էր Մուսաբէգեանցին կաթողիկոսանալուն լուրը առնելնէն ետքը, և կը շարունակէր բովանդակ 1440 տարւոյ ընթացքը։

**1447**. Երբոր Արևելեայց մէջ այդ անցուդարձերը կը զօրանային աղէն Կիլիկիոյ մէջ Մուսաբէգեանց բնաւ լուրջ ձեռնարկ մը չէր ըներ, և ոչ ալ մեծ ազդեցութիւն կրնար ստանալ։ Մեծոփեցին յայտնապէս կը գրէ, թէ Նոր եպիսկոպոս կաթողիկոսն ուզէին, չէ բոլոյս անօրէնոյս եպիսկոպոսն ունէր ի Սիրոյ ինքեան (ԿՈՍ. 63)։ Այդ անօրէնոյ գործերը կ'ակնարկեն այն

**ՄԵԾՈՓԵՑԻՆ ԵՒ ԿԻԼԻԿԵՑԻՔ**

գեղծումներուն, զորս անգամ մը քաղած ենք (§ 1409), և կրկնել չենք ուզեր։ Կ'երևի թէ աթոռին մէջ եպիսկոպոսներ ալ շատ չէին, ոչ թէ ձեռնադրուելիք չի գտնուելուն համար, այլ մրցակիցներ և ազդեցութիւն վարողներ չշատցնելու համար։ Այս նպատակը կը տեսնանք մենք, երբ կը կարդանք թէ է նոյն աթոռն, այսինքն կաթողիկոսութեան տիրանալուն պէս, Մուսաբէգեանց անմիջապէս եօթն նոր եպիսկոպոս ձեռնադրէ (ԿՈՍ. 63), կամ ուրիշ օրինակներու համեմատ հինգ եպիսկոպոս (ԿՈՍ. 88), որ է սովորական դարձած Ե և Է թուատառերու շփոթութիւնը։ Ասոնք հարկաւ իր կուսակիցներն են եղած, որ իրեն պաշտպան պիտի հանդիսանային, որովհետև ինչպէս շփոթութեանց առեն սովորական է, հակառակութիւններ ալ կը զօրանային Մուսաբէգեանցի դէմ։ Կիլիկեցի Լուր եպիսկոպոսն է ներքին կողմանցն, որով կրնանք իմանալ Թեմական եպիսկոպոսները, իրենք ալ զզուած աթոռին անկարգութեանէն, նամակ ողջունի և մխիթարութեան կը գրեն ամենայն արևելեան վարդապետաց և եպիսկոպոսաց, և ուղղակի Մեծոփեցիին ողջունէն, որպէս զի ցրուէ և գործէ։ Նամակին մէջ կը գրէին, թէ խոտան և անպէտ գտաք ի մէջ ամենայն ազգաց, և նոր կարգադրութեան մը պէտքը զգացնելով, կը յայտարարէին օր առաջ գործի ձեռնարկել։ Այս պարագայն կը ցուցնէ թէ փոխադրութեան գործը Կիլիկիոյ եպիսկոպոսական մարմնին հաւանութիւնն ալ ստացած էր, գոնէ մասնակի, և ընդհանուր համաձայնութիւն մը կը տիրէր ազգին զանազան մասերուն մէջ։ Միանգամայն կը հաստատէ Մեծոփեցիին ստանձնած գործունեայ դերը, և ամէն կողմ անոր անունին լսուած ըլլալը, որ Կիլիկեցի եպիսկոպոսներն ալ իրեն կը դիմէին և իրեն կը վստահէին, բոլոր Արևելեաններուն հաղորդել իրենց գիրը, և անոնք գործի յորդորել։ Բարեդէպ առիթ մը Մեծոփեցիին գործը կը դիւրացնէ, զի Էջմիածնեցի կրօնաւոր մը կու գայ իրեն այն օրեր, որուն կը յանձնէ

*ընմակն ողջունէ Կիլիկեցի եպիսկոպոսներուն և կը յանձնարարէ օգնել առաւելեան* (ԿՈՍ. 64)։ *Պէտք չէ ենթադրել որ Կիլիկեցի եպիսկոպոսներ Արեւելեաններէն իւրաքանչիւրին զատ զատ գրած ըլլան, այլ Մեծոփեցիին ուղղուած գիրն է, զոր Էջմիածնեցի արեգան ծոցը դրած վանքէ վանք և վիճակէ վիճակ չրջելով ամէն մէկուն կարդացնել պիտի տար։ Այս պարագային իբր երկրորդ դարձա նկատած է Մեծոփեցին* (ԿՈՍ. 63) *իւր ձեռնարկին, որով սկսաւ հետապնդել Էջմիածնի իշխանութեան* (ԿՈՍ. 63), *այսինքն է հայրապետական աթոռ Էջմիածնի մէջ վերահաստատելու։ Իրօք ալ մեծ ոյժ մըն էր այդ նամակը։ Եղելութիւնը տեղի ունեցած է 1440 տարւոյ սկիզբները, զի 1441'ին սկիզբները Հերմոնեցիէն եկած ժողովին հրաւէրին համար, յետ միոյ ամի էին դարձուցանէ կ'ըսէ* (ՄԵԾ. 65), *որով Կիլիկեցւոց նամակին ազդեցութիւն ունեցած ըլլալն ալ կը յայտնուի։ Մեծոփեցիին գործի մղուելուն պատճառներուն մէջ երազներ և պատահարներ ալ կան, որոնց մէջ նշանաւոր է Ստեփանոս Աղթամարցի արեղային խօսքը, վասն էր ու ետն յԱղթամար է հաստատեալ Զաքարիա կաթողիկոսն* (ԿՈՍ. 66), *որով կը չեշտուի Վասպուրականցոց միտքը, Զաքարիա Աղթամարցին Էջմիածին տանելով Ամենայն Հայոց կաթողիկոս հռչակել։*

**ՄՈՒՍԱԲԷԳԵԱՆՑ ՈՒ ԹԱՄԸ**

**1448.** *Աղթամարի նկատմամբ կազմուած այդ կարծիքը այնչափ տարածում առած էր, որ փոխադրութեան խնդիրին մէջ դէմ առ դէմ եղող երկու կողմերէն, անոնք որ նպաստաւոր էին՝ Աղթամարական կը կոչուէին նմանաձայնութեամբ բառախաղ կազմելով Աղթամարական անունին հետ, որով կը կոչուէին Կիլիկեցիք, որ փոխադրութեան մասին աննպաստ կարծիք ունէին։ Գրիգոր Մուսաբէգեանցի ալ աղթարմայական խմբէ վարակուած ըլլալուն իբր նշան կրնանք նկատել, 1440'ին իր կողմէն Եւգինէոս Դ'ի գրուած նամակը, զոր տարած է Ալբերդոս անուն Լատին կրօնաւոր մը։ Ձենք ուզեր խնդիր յուզել, թէ ուղղակի Սիսէ գրկուած գիր մըն է՞ր այն, թէ ոչ Կաֆայէ գրուած նամակ, իբր պատասխան Եւգինէոսի յանձնուած նամակին։ Սակայն ընդունելով ալ թէ Գրիգորէ գրուած ըլլայ, դժուար է ճշդել, թէ ինչ ըսել կ'ուզէ երբոր կը գրէ, բարձրագոյն բարբառ Բլբոյ տոյ, որ ճառագայթէ իբր արեգակն և լուսինը, կամ իբրև զգինդ երկին, և իբրև լոյս Բանկոյին* (ԱՁԱ. 104)։ *Եւգինէոսի նամակը Կոստանդինի էր ուղղուած* (1440), *ուստի պէտք էր որ անոր մահէն ետքը Գրիգոր զգացնէր իր յաջորդելը և պատասխանելը։ Դիտելու կէտ մըն է նաև որ այդ նամակին մէջ հրահանգ կոնդակին վրայ* (§ 1439) *ամենևին ակնարկ չըլլար։ Եթէ այս լռութիւնը կամաւոր է, մերժելու ձև մը կ'առնէ, իսկ եթէ պատահական է, հրահանգին Սիս ղրկուած չըլլալը կը ցուցնէ, և Կաֆայի մէջ պահուած կ'ըլլայ, և դիտողութեան արժանի կարևոր պարագայ կը դառնայ։ Սոյն կէտերը նկատի առնուած ատեն, Ալբերդոսի տարած նամակը նշանակութիւնը կը կորսնցնէ, և պարզապէս քաղաքավարութեան կամ ակնկալութեան նամակ մը կը դառնայ, որուն կարևորութիւն ալ տալ պէտք չըլլար։ Ընդհակառակն յօդուածագիր մը այնչափ մեծ նշանակութիւն կ'ուզէ տալ Փլորենտիոյ ժողովին և Եւգինէոսի կոնդակին, որ կը յայտարարէ թէ զոր Հայաստանէ վարդապետները տեսնելով Կոստանդնուպոլսէն և Փռանկէն դիմաց աթոռի փոխադրութիւնը կատարեցին* (11. ԱՄՍ. 466)։ *Սակայն այդ դիտողութիւնը, գիտողին նպատակին հակառակը կ'ապացուցանէ, և Կոստանդինին բրածը՝ անհատական գործ եղած ըլլալը կը հաստատէ, որով կը յայտնուի թէ Հայ եկեղեցւոյն ընդհանրութիւնը անոր գրածը չընդունեցաւ և մերժեց։ Իսկ մենք գիտել կու տանք, որ Մեծոփեցին՝ Սսոյ վրայ բարդած 12 մեղադրութեանց մէջ, ամէնէն մանր պարագաները բերելով մէկտեղ, Կոստանդինի միութեան կամ Եւգինէոսի կոնդակին գոյութիւնն իսկ կ'անգիտանայ։ Ասկից կրնանք հետևեցնել թէ միութիւն կամ կոնդակ՝ բնաւ մտադրութեան չեն առնուած, կամ այն է որ Արևելեաններ տեղեկութիւն իսկ չեն ունեցած, և կամ կարևորութենէ զուրկ են դատած, և հիմնուած են այն կէտին վրայ, թէ Կիլիկեցւոց մէջ Թոշեալ էր խօսք*

[illegible] Կոստանդեայ Կեսարացւոյ և Գրիգորի Անաւարզեցւոյ (ԿՈՍ. 55), և ոչ թէ նոր զարկ մը ստացած էր Կոստանդին Վահկացիի և Գրիգոր Խանձողատի ձեռքով։ Արեւելեայք յայտնապէս նկատի կ'առնեն ինչ որ հաստատեալ էր ու հին էր, և ոչ թէ բան մը որ նոր գործուած ըլլայ։

**ԱՋԻՆ ԱՆՅԱՅՏԱՑՈՒՄԸ**

1449. Երբ աթոռոյ փոխադրութեան խորհուրդը տակաւ դէպի լուծումը կը յառաջէր, և ամէն տեսակ պարագայ, պատահար ու երազ այդ նպատակին վրայ կը մեկնուէր, ամէնէն աւելի նշանակութիւն կը ստանար Լուսաւորչի Աջին Սիսի հայրապետանոցէն անհետանալ կամ գողցուիլը։ Մեզի զարմանալի կը թուի, որ Մեծոփեցին ակնարկ իսկ չունի այդ անհետացման վրայ, այնչափ որ թերեւս Մեծոփեցիին կրթնելով անհետացումը ուրանայինք, եթէ բազմաթիւ ժամանակակից յիշատակարաններ զայն չհաստատէին։ Անհետացման թուականն ալ բացատրութեանց կը կարօտի, զի մինչ նորեր ինչ ինչ յիշատակարաննե'րու կրթնելով 1441'ին կը դնեն անհետացումը (ՉԱՄ. Գ. 486), անդին ուրիշ յիշատակարան մը, 1439'ին գրուած, որոշակի կը հաստատէ թէ յայսմ ամի վերացեալ եղև Աջն ի Սսոյ, և ոչ գիտեմք զինչ եղև (ՓԻՐ. 119)։ Եթէ թուականին գրութեան կամ ընդօրինակութեան մէջ սխալանք սպրդած չէ, Աջին անյայտացումը Գրիգորի կաթողիկոսութենէն առաջ եղած կը հանդիպի՝ և Գրիգոր առանց Աջի կաթողիկոս եղած կ'ըլլայ։ Մենք կը դժուարանանք այդ ենթադրութիւնը ընդունիլ, զի այդ առիթին Գրիգորի կաթողիկոսութիւնն իսկ անընդունելութեան հանդիպած կ'ըլլար, և Մեծոփեցին ալ առանց դիտողութեան քննէն կաթողիկոս չէր ըսեր (ԿՈՍ. 63)։ Զամչեան ալ Մուսաբէգեանցին առանց հաստատութեան երևելի առաջնորդաց և աթոռոց նստեալ ըլլալը միայն կը յիշէ (ՉԱՄ. Գ. 486), մինչ Գրիգորի նախորդներն ալ նոյն կերպով նստած էին։ Ուստի 1439'ին անյայտացումը իբրեւ անհաւանական մէկդի թողլով, կը նախադասենք ուրիշ յիշատակագիրի մը ըսածը, որ այսպէս կը գրէ 1441'ին. Յայսմ ամի ՊՂ. դարձեալ յայլ մեծ պատուհաս հանդիպեցաւ Հայոց ազգիս, քանզի Աջ սուրբ Լուսաւորչին մերոյ, որ կայր հին քանի ժամանակի ի Սիս քաղաքի, անյայտ եղև, ոչ գիտեմք թէ գողացան, և ոչ գիտեմք թէ ինքն զինքն ծածկեց, և ի մեծ նեղութեան կան և ի տրտմութեան Հայոց ազգս վասն այս պատճառի, և զկաթողիկոս Գրիգոր բազում չարչարեցին և այլ եպիսկոպոսք ընդ նմա վասն Աջին Լուսաւորչին մերոյ ի ձեռն ընտրելոյ և արդարոյ [illegible], և վրայ կը բերէ Խաչափայտին, Լուսաւորչի նշխարաց, Վարագայ խաչին, և Սուքիասանց ոսկրներուն գիւտերը (ՓԻՐ. 125)։ Յիշատակարանը գրուած է 1441 մարտ 15'ին, և հարկաւ բաւական ատեն անցած էր, մինչեւ որ հեռաւորնակ յիշատակագիրը գոյժը իմանար, հետեւաբար յարմարագոյն կու գայ 1440'ին վերջին ամիսներուն դնել անյայտացումը։ Իսկ անյայտացումը պէտք է վերագրել այն Կիլիկեցի եպիսկոպոսներուն, որոնք Արեւելեաններու փոխադրութեան կը քաջալերէին իրենց նամակով (§ 1447), և այդ նպատակով Մեծոփեցիին կը դիմէին։ Անշուշտ փոխադարձ համաձայնութեամբ կազմած են այդ հնարքը, փոխադրութեան գործը դիւրացնելու համար, որով Մուսաբէգեանցը և իւր համախոհ եպիսկոպոսները նեղի դնելնին, հաշիւով եղած գործ մը կը տեսնուի, ճշմարտութիւնը ծածկելու համար։ Նոյնիսկ Մեծոփեցիին խոր լռութիւնը Աջին անյայտացման մասին, կշռուած լռութիւն մը կ'ըլլայ։ Գողութեան խորհրդակից և գործակից եղած ըլլալովը, նա չէր կրնար ո'չ ճշմարիտը խոստովանիլ, և ոչ անգիտակի պէս կեղծել, և յարմարագոյն սեպած կ'ըլլայ լռելը։ Լուսաւորչի Աջին Հռոմկլայի առումէն և Եգիպտացիներէն գրաւուելէն ետքը, նորէն ետ առնուած, և Սիսի մէջ պահուած ըլլալը, իւր կարգին գրած ենք (§ 1198), և կրկին այդ կէտին վրայ չենք անդրադառնար։

**ԺՈՂՈՎԷՆ ԱՌԱՋ**

1450. Այս նախապատրաստութիւններով՝ Արեւելեայք հետզհետէ փոխադրութեան գործին յաջողութիւնը կ'ապահովէին, ջանալով միւս կողմէն կողմնակիցներու թիւը ընդարձակել, և հայրենակութեանց ամէն կողմերէն համամիտներ ունենալ, որովհե-

տեւ թէ յաջողութեան հիմ և թէ օրինաւորութեան փաստ՝ պէտք էր ըլլար գործին հակառակութեան չհանդիպիլը, և ընդհանուր համակամութեամբ և հաւանութեամբ ընդունուիլը: Ամբողջ 1440 տարին այդ նախապատրաստութիւններով, հնարագիտութիւններով և թղթակցութիւններով անցաւ, և 1441'ի սկիզբները Յովհաննէս Հերմոնեցին, իբրեւ ամէնէն աւելի հեղինակաւոր անձնաւորութիւն, և Տաթեւեան աշակերտութեան պետ, և Եռամեծ Տաթեւացիին յաջորդ, ամէն կողմեր շրջաբերական հրաւիրագիրներ ղրկեց, [illegible] և [illegible] [illegible] գալ եպիսկոպոսունք և վարդապետք ի խորհուրդն բարի և օգտակար, զի մի ի [illegible] [illegible] խափանեսցի մեծի գործոյն: Ժամադրութեան ատենը որոշուած էր Զատիկէն ետքը, իսկ օրուան որոշում չենք գտներ, ի հարկէ պիտի նայէին որ բաւական թուով ժողովականներ հաւաքուած ըլլան: Ժողովատեղի որոշուած էր նոյն իսկ Էջմիածինը, ուր պիտի վերահաստատուէր հայրապետական աթոռը: Էջմիածինը Երեւանի ամիրայ Եաղուպ պէկի իշխանութեան ներքեւ էր (§ 1429). ուստի Հերմոնեցին հոգաց անոր հետ ալ բանակցիլ, և անկէ ապահովութեան գիր առաւ, գալ վաղվաղակի և հաւաքուիլ Էջմիածնի մէջ, և [illegible]: Մեծոփեցին Կիւրոսի կը բաղդատէ Եաղուպը, որ Հայոց զբազում ամաց աւերեալ աթոռը կամեցաւ նորոգել, ինչպէս Կիւրոս նորոգեաց զԵրուսաղէմ (ԿՈՍ. 65): Հերմոնեցիին հրաւէրը որչափ ալ [illegible] և [illegible] [illegible] գալու համար էր, սակայն բաւական կանուխէն ղրկուած պիտի ըլլայ. վասնզի Մեծոփեցին հրաւէրը առնելէն ետքը, Մեծոփէ Արճէշ եկած, Արճէշի մէջ ուղեկիցներու պզտիկ կարաւան մը կազմած, և Արճէշէ մեկնելով հետզհետէ հանդիպած է Դարօնք կամ Պայազիտ քաղաքը, Ակոռի աւանը՝ Մասիսի կողը, Արտաշատու Խորվիրապը, և Այրիվանքի Ս. Գեղարդը, անկէ անցած է Տաթեւ մեծ վարդապետին Հերմոնեցիին մօտ, և անկէ եկած է Երեւան, որ ժամադրավայրն էր զանազան կողմէ համնողներուն (ԿՈՍ. 68): Ուրիշ եկողներուն մասին ալ պէտք է նկատի առնել տեղերնուն հեռաւորութիւնը և ուղեւորութեանց դժուարութիւնները, և հետեւցնել թէ գոնէ երեք ամիս առաջ հրաւիրագիրները ղրկուած են, որով 1441 Աստուածայայտնութեան տօնէն առաջ հրաւէրները յղուած կրնանք ըսել:

**ՓՈԽԱԴՐՈՒԹԵԱՆ ԱՐԴԱՐԱՑՈՒՄԸ**

**1451**. Գործին արտաքին հանգամանքները պատմած ատեննիս, անոր ներքին կողմերն ալ հարկ կ'ըլլայ աչքէ չվրիպեցնել, թէ ինչ իրաւունքով և ինչ օրինաւորութեամբ պիտի կատարուէր աթոռին տեղափոխութիւնը: Նախ և առաջ ըսենք թէ Սիս կաթողիկոսութեան սկզբնական և օրինական աթոռ չէր, այլ զանազան օթարաններէն մէկն ալ այն էր, բնաւ տարբերութիւն չունենալով Դուին, Աղթամարէ, Արգինայէ, Անիէ և Հռոմկլայէ, ուր հետզհետէ աթոռը փոխադրուած էր պարագայից յարմարութեամբ, այնպէս որ եթէ տեղափոխութիւնը ներեալ չէր, բոլոր յիշեալ տեղերը նստող կաթողիկոսները հակաթոռներ պիտի նկատուէին: Հետեւաբար այդ վերջին տեղափոխութիւնն ալ պէտք չէ որեւէ դիտողութեան նիւթ ընել, և չենք իմանար թէ ինչպէս Եփրեմ Աջապահեան կրնայ պնդել, թէ հայրապետական [illegible] ի սրբոյն Գրիգորի Լուսաւորչին [illegible], [illegible] ի [illegible] Կիլիկիոյ (ԱՁԱ. 52): Մանաւանդ որ եթէ առաջին տեղափոխութիւնները հայրապետական աթոռը նախնական և նուիրական տեղէն կը հեռացնէին, վերջին տեղափոխութիւնը զայն պատահական և օտարական թափառումներէ ազատելով իր նախնական և նուիրական տեղը կը դարձնէր: Նկատողութեան արժանի է նաեւ, որ թափառումներուն միակ արդարացուցիչ փաստը, քաղաքական իշխանութեան կեդրոններուն տեղափոխութիւնն էր, երբ հետզհետէ մարզպաններ Դուին, Արծրունիներ Աղթամար, Բագրատունիներ Անի, Պահլաւունիներ Հռոմկլայ, և Ռուբինեաններ Սիս կը տանէին իրենց իշխանական կեդրոնը: Այլ երբ քաղաքական իշխանութիւնը իսպառ կը ջնջուէր ազգին մէջէն, և Հայաստանի տիրող պետութիւնը ոչ Եգիպտականն էր և ոչ Կիլիկեանը, այլեւս ոչ մի արդարացուցիչ պատճառ չէր մնար, որ պանդխտութիւնը շարունակէր, և հայրա-

պետական աթոռը իր նախնական և նուիրական սրբավայրէն դուրս թափառէր։ Քաղաքական անկումը՝ եկեղեցական անկումն ալ առաջ բերած էր հայրապետութեան վրայ, որ իր շուքն ու փառքը կորսուած, ափ մը բաղդախնդիր եկեղեցականներու ձեռք մնացած, ազգային մարմնոյն հսկողութենէն հեռացած, ուղղութիւն և աւանդութիւն մոռցած, եկեղեցւոյ շահն ու սրբութիւնը մէկ կողմ թողած, լոկ անձնական և արկածալից գործերու կը հետեւէր, աւելի ճիշդն ըսելու համար՝ կաթողիկոսական աթոռը իր ազդեցութիւնը կորսուած, լերան մը անկիւնը ինքիր գլուխ լքուած, անուն մըն էր եղած այլեւս առանց իրական իշխանութեան և գործնական օգտակարութեան։ Այդ կացութեան ինկած էր Սիսը, և հնար չէր որ իբր եկեղեցւոյ գերագոյն հայրապետին աթոռանիստ մնայր, մանաւանդ որ բաւական առնէ իվեր ձեռնարկուած միջոցները, Գրիգոր Տաթեւացիի ճիգերը, Պօղոս Գառնեցիի աշխատութիւնները, և հանրային զգացումին պահանջները, արդիւնք մը չէին ունեցած վիճակը փոփոխելու, բարեկարգութիւնը վերականգնելու, և արժանաւոր և օրինաւոր կացութիւն մը վերարծարծելու։ Սսոյ աթոռանիստը իր յետին ստորնութեան հասած էր, ամէնէն անկեալ խիղճերն ալ յուզելու, և նոյնիսկ Սսոյ եպիսկոպոսներն ալ զզուեցնելու չափ (§ 1447), որուն չէր կրնար երբեք յարմարիլ ֆէրմանէն կըլէկէս կոչումը (ԱՋԱ. 52)։

**1452.** Աթոռի տեղափոխութեան ոչ թէ լոկ արդարացեալ, այլեւ պահանջեալ գործ մը եղած ըլլալը ընդունելով մէկտեղ, կրնայ դիտուիլ թէ ուրիշ տեղափոխութիւնները կատարեցին պաշտօնի վրայ եղող կաթողիկոսներ,

**ՀԱՄԸՆԹԱՑ ՊԱՐԱԳԱՆԵՐ**

մինչ այս անգամ նոյն կաթողիկոսը չէր, որ Սիսէ Էջմիածին կը փոխադրուէր, այլ նոր կաթողիկոս մը կ՚ընտրուէր Էջմիածինի մէջ։ Զամչեան, այդ կէտը պարզելու համար կը յիշէ նախապէս, թէ Մուսաբէգեանցի ընտրութիւնը կատարուած էր առանց Հասանպէյէն էրէնէլէ ասաճնորդս և ախտոյ, որով ըսել կ՚ուզէ թէ օրինաւորապէս ընտրեալ կաթողիկոս չէր, և թէ ազգը իրաւունք ունէր զայն չընդունիլ և չճանչնալ, և նոր ընտրութիւն կատարել։ Իրօք ալ պատմուած պարագաներն ալ կը վկայեն, թէ նախորդին սպանութեամբ, և հետապնդողի մը դէմ մրցելով յաջողած էր Մոլլաքէս իշխանի որդին Գրիգոր՝ հայրապետական աթոռին տիրանալ (§ 1441), և ինչպէս Յովսէփը (§ 1442), նոյնպէս Գրիգորն ալ հնար էր կաթողիկոսներու շարքին մէջ չառնել։ Ուրիշ պարագայ մըն ալ ունինք նմանանապէս Զամչեանէ յառաջ բերուած, անշուշտ աղբիւր մը քաղելով, թէ Արեւելահայք ֆըրէյին ու Գրիգոր Մուսաբէգեանց և Երուէրէյին ու յիշխանին, և թէ սա չէ յանէ ֆու անդր (ՉԱՄ. Գ. 486)։ Ասկէ ալ կը հետեւի, որ Մուսաբէգեանց երթալ չուզելով, հրաժարեալ նկատուեցաւ, և թէ ոչ յայտնապէս, գոնէ լռելայն նոր ընտրութեան հաւանեցաւ, կամ թէ իբր ըմբոստ դատուեցաւ, և գահընկէց հռչակուեցաւ։ Զամչեանի յառաջ բերած պարագաները նկատի չառնելով ալ, մենք պիտի յայտարարենք թէ Հայաստանեայց եկեղեցւոյ սկզբունքով՝ ոչ աթոռը, և ոչ եկեղեցին, որեւէ աթոռակալի կամ հայրապետի տիրապետական կամքին չեն յանձնուիր։ Հայոց եկեղեցին, իր կաթողիկոսներն ալ ազգային ընդհանուր ժողովին ենթարկեալ գիտէ, և ժողովով դատուելնին ու գահընկէց ըլլալնին կ՚ընդունի։ Պատմութիւնը մեզի ցուցուց թէ՛ դատուած և արդարացած, և թէ՛ դատուած ու դատապարտուած, և թէ՛ ժողովով գահընկէց հռչակուած կաթողիկոսներ, որ այդ սկզբունքին գործնական ցուցմունքներն են։ Ըստ այսմ, եթէ Մուսաբէգեանցի ընտրութիւնն օրինաւոր համարուի կամ ոչ, կամ եթէ Մուսաբէգեանց Էջմիածին երթալու հրաւիրուած ըլլայ կամ ոչ, երբոր համակամ և համաձայն ազգային ժողով մը դադարած կը հռչակէ Մուսաբէգեանցի կաթողիկոսութիւնը, և աթոռը դադարած ճանչնալով, նոր կաթողիկոս կ՚ընտրէ, այլեւս խնդրոյ տեղի չկրնար ըլլալ գործին կանոնաւորութեան, և նոր ընտրեալին օրինաւորութեան վրայ։ Երբոր Պիսայի և Կոստանդիոյ ժողովները, պաշտօնի վրայ գտնուողները մերժելով Աղեքսանդր Ե

*կամ Մարտինոս Ե պապերը ընտրեցին* (§ 1431), *և երկուքն ալ իբրև օրինաւոր պապեր ընդունուեցան Համէականներէն, չենք իմանար թէ ինչպէս Հայ համէականներ կը յաւակնին* [illegible] *մը ցուցնել Վաղարշապատի ազգային ժողովէն ընտրուած կաթողիկոսը* (ԸՍՏ· 248), *որպէսզի օրինաւոր կաթողիկոսութիւն սեփականեն Կիլիկիոյ աթոռին, և Կիլիկիոյ անունով արդարացնեն դարեր վերջ ստեղծուած Հայ կաթոլիկ կաթողիկոսութիւնը։ Հակաթոռութեան վճիռը ոչ թէ աթոռակալ մը կու տայ իրեն մրցակիցին դէմ, այլ հանրութիւնը, այսինքն ազգն ու եկեղեցին, մէկուն դիրքը պաշտպանելով և զօրացնելով, և միւսին ներքին ու արտաքին ճանաչումը զլանալով, մին օրինաւոր ու միւսը ապօրէն, մին աթոռակալ ու միւսը հակաթոռ կը վճռէ։ Վաղարշապատի ժողովը ազգին հանրութեան օրինաւոր ներկայացուցիչն էր, իւր որոշումը վաւերական եղաւ օրէնքով և կանոնով, հաստատուն եղաւ գործով և արդիւնքով։*

ԺՈՂՈՎԻՆ ՆԵՐԿԱՆԵՐԸ

**1453**. *Վաղարշապատի* 1441 *տարւոյ ժողովին ընդհանուր ազգային ժողով ըլլալուն կը վկայեն անոր կազմութիւնը, և ներկաներուն թիւը։ Մեծոփեցին* «աւելի քան զերեք հազար անձինս» *կը հաշուէ ներկայ եկեղեցականաց թիւը* (ԿՈՍ· 53), *և այս բաւական է, առանց պէտք ունենալու յիշատակարանի մը համեմատ եօթն հարիւրի բարձրացնելու ներկայից թիւը* (ՓԻՐ· 133)։ *Ժողովի եկողներուն ամէնքն ալ ձայնի տէր անձինք էին, զի երեսունէ աւելի ականաւոր և անունով յիշուած ներկաներէն, և քանէ աւելի գրաւոր մասնակցողներէն զատ՝ կային* «այլ բազում վանորայք և կրօնաւոր սուրբ հարք և պատուական երիցունք» (ԿՈՍ· 52), *կամ ուրիշ բառերով վանահայրներ, վարդապետներ և աւագերէցներ, որոնք միշտ ժողովներու մէջ ընդունուած էին, ինչպէս Սսոյ* (ԿԱԼ· 460) *և Ատանայի* (ԿԱԼ· 565) *ժողովներու մէջ ալ ներկայ էին։ Աշխարհական ներկայացուչութիւնն ալ պատրաստ էր, և այս դիտմամբ կը յիշուին* «ազատք և որդիք ազատաց, իշխանաւորք և տանուտէրք» (ԿՈՍ· 53), *որոնք քաղաքական կարգերու խանգարուելէն ետքը, նախարարներու ու սեպուհներու ու իշխաններու տեղը կը բռնէին, և դարուն սովորութեան համեմատ աշխարհիկ դասակարգը կը ներկայացնէին։ Անունով յիշուած եպիսկոպոսներն ու վարդապետները կը քաղենք Մեծոփեցիէն* (ԿՈՍ· 51—53)։ *Նախապէս յիշենք չորս աթոռները, որոնք հին կանոնով կաթողիկոսընտիր ճանչցուած էին, իբրև զանազան բաժիններու ներկայացուցիչներ* (§ 930)։ *Ըստ այսմ կը տեսնենք որ Վաղարշապատի ժողովին ներկայ էին Գրիգոր Արտազի, Գրիգոր Հաղբատի, Շմաւոն Տաթևի և Յովհաննէս Բջնոյ եպիսկոպոսները։ Սիւնեցիներու և հիւսիսային գաւառներու կողմէն հոն էին Յովհաննէս Հերմոնեցի մեծ վարդապետ, Զաքարիա Հաւուցթառայ և Ստեփանոս Սիւնեաց արքեպիսկոպոսները, և անոնց հետ Զաքարիա Նորավանքի ու Մարտիրոս Սևորդեաց եպիսկոպոսները, և Դաւիթ Սիւնեցի ու Ստեփանոս Սիւնեցի վարդապետները՝ Հերմոնեցիին ձեռնասուններ։ Հիւսիսայիններուն հետ յիշենք և Ազարիա Գանձասարի կամ Աղուանից եպիսկոպոսը, որ յատուկ վիճակ մը կը ներկայացնէր։ Այրարատի կամ Միջնաշխարհի վիճակներէն հոն էին Գաբրիէլ Էջմիածինի, Կարապետ Յովհաննավանքի, Անտոն Խորվիրապի, Յակոբ Կողբի, Մկրտիչ Բագրեւանդի եպիսկոպոսները, և Սարգիս Ձագավանեցի և Տիրացու Վանանդեցի վարդապետները։ Վասպուրականցիներն ալ բաւական թուով եկած էին, գլուխնին ունենալով Յովհաննէս Արճէշի եպիսկոպոսը և Թովմաս Մեծոփեցի եռանդուն գործիչը։ Ասոնց հետ էին Կիրակոս Ռշտունեցի, Մկրտիչ Մեծոփեցի, Կարապետ Խառաբաստեցի, Յովսէփ Սուխարեցի, Ղազար Բաղիշեցի, Ստեփանոս Արծկեցի, Յովհաննէս Արծկեցի, Զաքարիա Վարագցի, և Յովհաննէս Վարագցի վարդապետները, որոնց վրայ ուրիշ յիշատակարան մը կ'աւելցնէ Սարգիս Արծկեցի և Յովհաննէս Խլաթեցի վարդապետները* (ՁԱՄ· Գ· 487)։ *Դարձեալ մի այլ յիշատակարանի մէջ ալ կը գտնենք Կարապետ Մեծոփեցի, Մկրտիչ Հողեցի, և Մկրտիչ Ողբեկենց վարդապետները* (ՓԻՐ· 122), *որոնց վերջին երկուքը ուրիշ տեղ Հողձեցի և Օղուլբէգեան անունով յիշուածներն են*

(§ 1380)։ *Սաղնապատի Կիրակոս անունը կրկին յիշուած է թէ ներկաներու և թէ բացականներու մէջ, և հաւանաբար եպիսկոպոս մըն է ներկայն, և համանուն վարդապետ մըն է թղթով մասնակցողը։*

**1454.** *Հեռաւորութեան պատճառով, կամ թէ քաղաքական արգելքով, շատեր անձամբ ներկայ չկրնալով ըլլալ գրով հաւանած են Վաղարշապատի ժողովին, և անոնց գլխաւոր խումբը կը կազմեն Տարօնցի վարդապետները։ Գլակայ Ս. Կարապետի գերահռչակ վանքէն, Յովսէփ և Աւետիս եպիսկոպոսներ, և Թորոս, Բարսեղ ու Գրիգոր վարդապետներ, Տիրինկատարի Ս. Առաքելոց վանքէն Պօղոս և Զաքարիա վարդապետներ, Սասունի Մատին Առաքելոց վանքէն Յովհաննէս վարդապետ, Վանատուրի վանքէն Կիրակոս վարդապետ, և Բաղէշի վանքերէն Դաւիթ եպիսկոպոս և Սահակ ու Ստեփանոս վարդապետներ։ Բացականներուն երկրորդ խումբն ալ, որոնք գրով հաւանած են, Աղթամարցիներն են, որոնց գլուխը կը յիշուին Աւետիս վարդապետ Սուրբխաչեցի, և Յովհաննէս վարդապետ Ապարանեցի, Հիզանու և Ապարանից վանքերու առաջնորդներ, Գամաղիէլի վանքէն Յովհաննէս և միւս Յովհաննէս, Բարեձորոյ վանքէն դարձեալ Յովհաննէս և Հիզանի վանքէն Կարապետ վարդապետներ։ Աղթամարցի վարդապետներուն մասնակցութիւնը կը հաստատէ Զաքարիա կաթողիկոսին համաձայնութիւնը Վաղարշապատի ժողովին գործին հետ, թէպէտև անձամբ ներկայ ըլլալ չէ ուզած, և յատուկ թուղթ գրելն ալ չէ յիշուած։ Այս անուններու մէջ Երուսաղէմի պատրիարքութեան կողմէն պատգամաւորի մը անունը չենք գտներ, բայց զարմանալու չէ, զի Երուսաղէմ իր առանձնացեալ դիրքին մէջ և շարունակ ազգային հաստատութեանց պաշտպանութեան զբաղած, դիւրութիւն չունէր ընդհանուր գործերով զբաղելու, բաւական սեպելով հանրութեան ճանչցած կաթողիկոսէն ձեռնադրութիւն առնալ, և ինքնուրոյն կերպով իր գործերը վարել։ Իսկ Կիլիկիոյ աթոռին և Կիլիկեան վիճակներու համար բաւական նշանակալից են չորս եպիսկոպոսներուն նամակն ու դիմումը (§ 1447), և Մուսաբէգեանցի ընթացքին մասին յայտնուած կարծիքները (§ 1452)։ Բայց ամէնէն աւելի մեր տեսութիւնը հաստատող պարագան, Սսոյ աթոռին պահած լռութիւնն է հրապարակաւ կատարուած և իրեն վերաբերեալ գործի մը հանդէպ, վասնզի անոր կողմէն ոչ մի բողոքի և ոչ մի հակառակութեան յիշատակութիւն չկայ Վաղարշապատի ժողովին ըրածին դէմ։ Ըստ այսմ ամէն տեսութիւններ և հանգամանքներ կու գան ապացուցանել, թէ Վաղարշապատի ժողովը ընդհանուր ազգին և ընդհանուր եկեղեցականութեան համակամ և համահաճ համաձայնութեամբ գործեց առանց բացառութեան, և օրինաւոր ու վաւերական ժողով եղաւ, և եկեղեցական կանոններու և ազգային իրաւունքներու հիմամբ կատարուեցաւ հայրապետական աթոռին Սիսէ Էջմիածին փոխադրութիւնը, ուրկէ հեռացած էր 484'ին Մանդակունիին օրով, և հաստատուած էր Դուին՝ Էջմիածինէ ոչ շատ հեռու (§ 321), և անկէ ալ կը հեռանար 928'ին Դրասխանակերտցիի օրով (§ 732), և վերջապէս իր նախնական և նուիրական սրբավայրը կը դառնար 957 տարի աստանդական թափառելէ ետքը։*

**ԳԻՐՈՎ ՀԱՒԱՆՈՂՆԵՐ**

**1455.** *Որչափ ալ ներքին կերպով գործին բնութեան հետ կապուած չըլլան, սակայն աւելորդ չենք սեպեր յառաջ բերել ինչ ինչ պատահարներ, որոնք նոյն ժամանակի գործիչներուն ըմբռնումով գործին օրինաւորութիւնն ու յաջողութիւնը երաշխաւորած են։ Որովհետև նոյն իսկ այս տեսակ դիւրահաւան և աւելորդապաշտ ըմբռնումներով երեւան կու գայ, թէ եղած գործը ոչ մի դժուարութեան հանդիպած չէ, և ամենայն ինչ դիւրաւ կերպով և ընդհանուր հաւանութեամբ կատարուած է, այնպէս որ Մեծոփեցին համարձակ կը գրէ, թէ* ամենեքեան միաբանութեամբ, և ընտրութեամբ Հոգւոյն Սրբոյ, տեսլեամբ գիշերոյ, և յանուրջս երազոց, հաստատութեամբ ամենայն Հայկազեան գաւառի, ազատաց և քորեպիսկոպոսութեամբ ամենայն սրբոց, *սկսան ու լրացուցին առաջադրեալ գործը*

**ԳՈՒՇԱԿԱԿԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐ**

(ԿՈՍ. 53)։ *Մեծոփեցին Մեծոփայ վանքէն չմեկնած երեք անգամ աւետարանի վրայ վիճակ կը բանայ, և հետզհետէ կը գտնէ.* Դուռն Ցէառն է գառանն էր (ՄԱՐ. Դ. 1), Քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհի (ՅՈՀ. ԺԶ. 33), *և դարձեալ* Դուռն Ցէառն է գառանն էր։ *Մեծոփէ մեկնած առեններն բարեպաշտ մարդ մը կու գայ պատմել, որ գիշերը տեսեր է կարմրով, կանաչով և ոսկեթելով ոստա-ընեալ զօրքեր՝ որոնք ըսեր են թէ* զօրք Էջ-մածնի եմք, *և օդէն թռչելով գացեր են Վաղարշապատ* (ԿՈՍ. 97)։ *Ցիշուած երեք գոյները Հայկական* եռագոյնը *կազմած ըլլալու նշանակութիւնն ունին։ Կրօնաւոր մը երազ տեսեր է թէ արեւը խաւարելով արեւմուտք և հիւսիս կը պատի, և Էջմիածնի դուռը գալով կը լուսաւորուի։ Ուրիշ կրօնաւոր մըն ալ տեսեր է սպիտակ ձիու մը վրայ նստած լուսաւոր մարդ մը, որ Փրանկաց երկրէն կու գայ, Վաղարշապատ կը մտնէ, եկեղեցին բանալ կու տայ, անկէ ժողովուրդը առաքացեալ արտ մը կը տանի, և ամէնուն մանգաղներ կը բաժնէ որ հնձեն։ Ուրիշ մըն ալ Օշական Ս. Մեսրոպի գերեզմանին գացած կ'ըլլայ, հոնկէ գաւազան մը կը բերէ, եկեղեցիին մէջ կը տնկէ, ուրկէ խնձորներ կը հասնին և կը ճաշակեն։ Այլազգի կին մը կաթողիկէի եկեղեցին կանթեղներով լեցուն կը տեսնէ։ Աստուածապաշտ մարդ մըն ալ երկինքէն կախուած կանթեղ մը կը տեսնէ, և ձայն մը որ կ'ըսէ,* կոչեցաւ Էջմածին է *(ԿՈՍ. 72)։ Այս երազապատում գրոյցներ իրաւ գործին իսկութեան համար փաստ մը չեն, բայց կը բաւեն ցուցնել թէ ամենայն ինչ առանց հակառակութեան և առանց դժուարութեան կատարուած է, և թէ ամենուն համոզումը եղած է, որ իրենց ձեռնարկը աստուածային պաշտպանութեամբ և առանց արգելքի վերջացած է։ Ամէն դար իրեն մէկ մտածելու և գործելու կերպն ունի, Միջինդարն ալ աւելորդապաշտ էր թէ Արեւելքի և թէ Արեւմուտքի կողմերը։ Իսկ մենք ոչ թէ անոնց իսկութեան, այլ այդ ձեւերու մէջ ծածկուած համոզման մտադրութիւն կ'ընծայենք։*

**1456**. *Ցառաջ բերուած երազապատում զրոյցներէ շատ տարբեր է, և ազգային ըմբռնումի հիմ կը կազմէ, Լուսաւորչի Աջին տրուած նշանակութիւնը, իբրեւ կնիք և*

**ԱՋԸ ՅԱՅՏՆՈՒԱԾ**

*երաշխաւորութիւն օրինաւոր և ճշմարիտ հայրապետութեան։ Այս բանին հաստատութիւնը կը գտնենք այն անխախտ սովորութեան մէջ որով կոնդակները* է սուրբ Աջէն օրհնու- *թեամբ կը մակագրուէին, միւռոնը Աջով կը նուիրագործուէր, և եպիսկոպոսական ձեռնադրութեանց համար ալ Աջը կը գործածուէր։ Փոխադրութիւնը կատարելու նախապատրաստութեանց գլխաւորն եղաւ Աջը Սիսէ հեռացնել (§ 1449), իսկ Էջմիածնի մէջ յայտնուիլը՝ գործին վաւերականութեան փաստ եղաւ։ Ցիշատակագիր մը կը գրէ.* «Այս Լուսաւորչին է Սուրբ փորագրեալ բերին յէջմածին, և վերոյին հաստատեցին չխախտելիութեան» *(ՍԱՄ. 175)։ Ուրիշ մըն ալ կը գրէ, թէ* սուրբ Լուսաւորչի Այն կոչեալ էր է Սուրբ, և էլ համբաւն է Վաղարշապատ, վասն որոյ ժողովեցան և հաստատեցին զԲուռն յէջմածին *(ՓԻՐ. 133)։ Նոյն ոճով ուրիշ յիշատակագիր մըն ալ նորընտիր կաթողիկոսը* արժանաժառանգ *կ'ընդունի,* վասնզի «Այս որբոյն Գրիգորի Լուսաւորչին փորագրեալ է Սուրբ և բերեալ եղին յիւր սեղանն աթոռին» *(ՓԻՐ. 129)։ Նոյնինքն Դավրիժեցին ալ կը գրէ, թէ* սուրբ աթոռն յէջմածին յայս ժամանակի Նորոգեցաւ, զանզի Այն որբոյն Գրիգորի Տիրոյ Լուսաւորչին է սուրբ յէջմածինն յայտնեցաւ *(ԴԱՎ. 336)։ Մենք միւս չունինք ըսելու, թէ առանց Աջին՝ Հայոց կաթողիկոսութիւն չկրնար ըլլալ, սակայն չենք կրնար չճանչնալ, թէ այս եղած է ազգին մէջ տարածուած համոզումը, և մտադրութիւն կը հրաւիրենք յառաջ բերուած յիշատակութեանց մէջ գործածուած* վասն որոյ *ու* վասնզի *ու* զանզի *պատճառականներուն, որոնց վրայ կը հիմնուի փոխադրութեան օրինաւորութիւնը։ Մեր նպատակն է, ոչ թէ վերացեալ խնդիրներով զբաղիլ, այլ իրապէս և գործնականապէս տեղի ունեցած եղելութիւնները վերլուծել և բացատրել, և անոնց մէջ ծածկուած ընդհանուր ըմբռնումը, ազգային համոզումը, և եկեղեցւոյ առումը խլեր հանել, որպէս զի կատարուած եղելութեան ճիշդ իմաստը և օրինական զօրութիւնը ցուցնենք։ Այս*

կերպով է որ կը հաստատուի աթոռոյ փոխադրութեան կանոնական ուղղութիւնը. Սսոյ հայրապետանոցին դադարումը, և Էջմիածնի հայրապետանոցին վերանորոգումը։ Այս եղած է նոյն ատեն ազգին համոզումը, այդ համոզումը անխախտ պահուած է մինչև մեր օրը, և Հայ եկեղեցւոյ ամէն հաւատացեալներ բնաւ կասկած չունին այդ ճշմարտութեան մասին։

---

# Տ. ԿԻՐԱԿՈՍ Ա. ՎԻՐԱՊԵՑԻ

**1457**. Աթոռոյ փոխադրութեան տարւոյն զատիկը կ'իյնար ապրիլ 16'ին, և հետզհետէ կը սկսէին հասնիլ ժողովականները Երեւան քաղաքը, որ աւելի յարմար էր բազմաթիւ եկողները պատսպարելու։

ՄՐՑԱԿԻՑ ԸՆՏՐԵԼԻՆԵՐ

Հարկաւ այդ միջոցին խորհրդակցութիւններ ալ կը կատարուէին հաւանական ընտրելիին վրայ։ Մեծոփեցին կը գրէ, թէ Բազումք է յեղծուածն յառաջ կոչեցաւ գուն է յառաջնորդութեան Թորգոմական գրոցս, և ոչ կամեցան բառնալ զծանրութեան պաշտօնութեան բարձրագոյն ատենին (ԿՈՍ. 69)։ Բայց մենք այսպէս լուսաւոր պիտի չըլլանք հաւանական ընտրելիներուն համեստ զգացումներուն վրայ, և մեր կարծիքը կ'արդարացնեն հետզհետէ կատարուած եղելութիւնները։ Հիւսիսայիններուն մէջէն Զաքարիա Հաւուցթառեցին, որ եպիսկոպոսներուն երիցագոյնն էր, Յովհաննէս Հերմոնեցին՝ որ արդիւնաւոր մեծ վարժապետն էր, և Գրիգոր Արտազեցին՝ որ մեծ վիճակի արքեպիսկոպոս և ձեռներէց գործիչ մըն էր, երեքն ալ իրենց սրտին մէջ մեծ ակնկալութիւններ կը տածէին նախապատուուած ընտրելին ըլլալու։ Իսկ Վասպուրականցիներ իրենց միտքը դարձուցած էին Զաքարիա Աղթամարցիին վրայ, որ ոչ միայն կարող անձ մըն էր, այլև այս կերպով Աղթամարի բաժանումը պիտի անհետանար, և բոլոր Վասպուրական և բոլոր Հայաստան մէկ իրաւասութեան պիտի վերածուէր։ Մենք ալ գործին վրայ անկաշկանդ նայելով պիտի համաձայնէինք ընդունիլ Վասպուրականցւոց տեսութիւնը, սակայն զժբախտաբար չատ զօրաւոր էր գաւառական խարութեանց գաղափարը, և Տաթեւեան աշակերտութիւնը յանձն չէր առներ այդչափ բարձրացած տեսնել Աղթամարի բաժանեալ աթոռը, որ մինչև իսկ իր վրան ալ իշխէ։ Ուստի եթէ յառաջ կոչուած ընտրելիները առերեւոյթ համեստութեամբ ետ կը քաշուէին, անկեղծ խոնարհամտութիւն չէր այն, այլ ճարտար հնարիմացութիւն, իրարմէ խիթալով առջեւ չնետուելու համար։ Մեծոփեցին ինքն ալ կը հերքէ իր գրածը, երբ կը խոստովանի թէ կարգադրեցան այն Յովհաննէս Հերմոնեցին, և Զաքարիայն Հաւուցթառեցին, ոչ կամեցան Գրիգոր Արտազեցին լինել կաթողիկոս, վասն ապիկարութեան որ առ նա ունէին (ԿՈՍ.78)։ Չենք կրնար ճշդել, թէ բոլոր հաւանական ընտրելիները մէկ կողմ դնելով, բոլորովին դուրսէն, գործին չմասնակցած ու վրան չի խօսուած անձ մը ընտրելու որոշումը, կանուխ կատարուած խորհրդակցութեանց մէջ հաստատուեցաւ, թէ ոչ վերջին պահուն Էջմիածնի մէջ որոշուեցաւ։ Բայց ստոյգ է թէ հուսկ ուրեմն այդ խոհական ձեւով կատարուեցաւ ընտրութիւնը։ Մրցակիցներու մէջ մղուած խուլ պայքարը կը հաստատուի նաև անով, որ Երեւանի կառավարիչ Եաղուպ պէկին կողմէն հրաման եղև օծանել կաթողիկոս ազանց Հայաստանութեան (ԿՈՍ. 69), որ ըսել է թէ Պարսիկ իշխանաւորն ալ բան մը իմացեր էր տիրող հակառակութիւններուն մասին, որ պէտք զգացեր է եպիսկոպոսներն ու վարդապետները խաղաղութեան յորդորել։

**1458**. Ընտրողական գործողութեանց ամսաթիւերը Մեծոփեցին որոշակի չտար։ Կը յիշէ թէ Երեւան համնելով սիրալիր ընդունելութիւն գտան ազգայիններէն, որոնք մեծաւ ուրախութեամբ ընդ առաջ ելին, վասնզի

*ի վաղուց հետէ անտերունջ էին, և չէին տեսած այսչափ վարդապետս և եկեղեցականս ի մի ժողովեալս։*

**ԺՈՂՈՎԻ ԳՈՒՄԱՐՈՒՄԸ**

*Երևան համնելէն է մի օրն Եաղուպ պէկէն հրաւէր ըստացան, և անոր մօտ գացին, զի կ'ըսէ թէ հասաք առ նա, և Եաղուպ սիրով ընդունած է զիրենք իբրև զթագաւոր քրիստոնէից* (ԿՈՍ. 68)։ *Ցայտնի է որ Եաղուպ աշխարհաշէն նպատակներ ունէր, և կ'ուզէր իւր գաւառը շէնցնել, այն տեղ հաստատել տալով Հայերուն կեդրոնը, և զանոնք քաջալերելով ազատօրէն իրենց մտադրութիւնը կատարել։ Երբոր ժողովականները իրեն մօտ կը հաւաքէ, զանոնք հանդէսով ճանպայ կը հանէ, անոնց ընկերակից կու տայ զգիրս իւր, և գործին աւելի փայլ աւելցնելու համար, փողով և թմբկով և փողովք բարձրաձայնիւ կու գան կը մտնեն ի սուրբ քաղաքն Վաղարշապատ* (ԿՈՍ. 69)։ *Չենք կրնար ենթադրել թէ ամէնքը մէկ օր Երևան հասած և ի մի օրն Վաղարշապատ եկած և ընտրութիւն կատարած ըլլան, և երկու օրուան մէջ ամէն գործ լրացած ըլլայ։ Միւս կողմէն տօնական օրերու յիշատակութիւններ ալ չունինք, որ անոնցմէ ամսաթիւ քաղենք, բայց չենք կարծեր թէ Վաղարշապատի ժողովը բացուած ըլլայ Համբարձումէն առաջ, որ այն տարի կը հանդիպէր մայիս 25'ին։ Ընտրողական գործողութեանց մանրամասնութիւններ ալ կը պակսին։ Մեծոփեցիին պատմած ձևն ալ քիչ մը տարօրինակ կ'երևի, երբ կ'ըսէ, թէ արկին վիճակ ի սուրբ աթոռն, և ել վիճակն Կիրակոս հայրապետին* (ԿՈՍ. 72), *վասն զի աւետարանին մէջ Կիրակոսի անունը գտնել հնար չէր։ Ուստի պէտք է ըսել, թէ Կիրակոսի վրայ համաձայնութիւն գոյացնելէն ետքը, աւետարանի վիճակին ալ դիմած են, և աւետարանը բացած տանենին նպատակայարմար տուն մը հանդիպած և այս կերպով կատարած ընտրութիւնին վերնային կամքին համաձայն ճանչցած են։ Կիրակոս, որ այս կերպով կաթողիկոսութեան կը բարձրանար, Մասիս լերան ստորոտը, Ակոռի աւանին մօտ, Վանստան անապատին մէջ ճգնող վարդապետ մըն էր, հեռու ամէն աշխարհային գործերէ, և անմամն փոխադրութեան գործին աշխատութիւններէն, որով ինկարէս փնտռուած չէ-զոք անձն էր, որ ներհակընդդէմ մրցակցութիւնները պիտի լռեցնէր։*

**1459.** *Կիրակոս Վասպուրականցի էր, Արճէշ կամ Բաջրերունեաց գաւառի Խառաբաստ գիւղէն* (ԿՈՍ. 54) *և Խրլոց ազգատոհմէն* (ԹՈՐ. Ա. 224)։

**ԿԻՐԱԿՈՍԻ ՆԱԽԸՆԹԱՑԸ**

*Ծննդեան տարին որոշ նշանակուած չէ, բայց եթէ 1397'ին քահանայ ձեռնադրուեցաւ Արտազու Պօղոս եպիսկոպոսէն* (ԿՈՍ. 54), *գոնէ 25 տարեկան եղած ըլլալու է, որով ծնունդը կրնայ դրուիլ շուրջ 1370'ին, և 70 տարեկան եղած կ'ըլլայ 1441'ին։ Առաջին աշակերտութիւնը սկսած է իրեն ծննդավայրին մօտ եղող Սուխարու վանքին մէջ, նախ Սարգիս Ապրակունեցիի և յետոյ Վարդան Հոգոցեցիի մեծ վարժապետաց ձեռքին տակ* (ԿՈՍ. 54)։ *Եղած է նաև Սարի վանքը Սարգիս Սորբեցի վարդապետին մօտ, Աղթամարայ վիճակին մէջ, հաւանաբար Սուխարու և Սալնապատի վանքերուն լքուելէն ետքը։ Բայց վերջէն Վասպուրականի կողմերը թողած է առանձնութեան և ճգնութեան փափաքով, և 1409'ին հաստատուած է Այրարատ գաւառի Խորվիրապի վանքը, որ է սուրբ ուխտն և կենդանաթաղ գերեզման Լուսաւորչին, և ուր երկար տարեն մնալովը Վիրապեցի կոչումը առած է իբրև մակդիր անուան։ Ճգնողական կեանքին մէջ աւելի խստութեանց դիմելով, վերջին տարիներ Խորվիրապի վանքն ալ թողած, գացած էր Արարատի ստորոտը, Ակոռիէ ոչ շատ հեռու Վանստան կոչուած տեղը, և հոն իրեն յատուկ ճգնարան հաստատած, ուր կը գտնուէր առանձնացեալ երբ փոխադրութեան խնդիրով Արևելեայք տաքի վրայ էին։ Կիրակոսի գովաբան Մեծոփեցին կ'ըսէ թէ, քահանայական ձեռնադրութիւն առացած օրէն ոչ միս ճաշակեալ էր, և ոչ գինի ըմպեալ, և ոչ կաթն անասնոց կերեալ, գովելի և առաքինի սրբութեամբ սնեալ, սրբաբերան, հեզ և խոնարհ, ոչ նենգաւոր և ոչ անէծք ի բերանոյն ելեալ* (ԿՈՍ. 54)։ *Մեծոփեցին ոչ միայն գովաբանը, այլ և պաշտպանը եղած է Կիրակոսի, և շատ հաւանականութեամբ երբ յորժամ Մեծոփեցին ի յԱկոռի կը հանդիպէր*

(ԿՈՍ. 67), իր միտքը հաստատած էր Կիրակոսը առաջ քշել, եթէ Զաքարիա Աղթամարցին դժուարութեան բաղխէր։ Կիրակոս ծննդեամբ և աշակերտութեամբ Վասպուրականցի, այլ երեսուն և երկու ամօք յառաջ ելեալ ի գաւառէն իւրմէ (ԿՈՍ. 54), այլեւս Վասպուրականցիներէ զատուած կրնար նկատուիլ, և Սիւնեցիներու և Արարատցիներու կողմէ ընդունելի ըլլալ, ինչպէս եղաւ ալ։

**1460.** Ամենայն հաւանականութեամբ, Կիրակոս ալ այն երեք հարիւր ժողովականներէն մէկն էր, որոնք Վաղարշապատ հաւաքուած էին, որովհետեւ չենթադրուիր որ այդպիսի բացառիկ պարագայի մէջ ալ թողած ըլլայ իւր ճգնարանը։

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐ**

Երբոր ընտրութիւնը լրացաւ և աւետարանի վիճակով ալ նուիրագործուեցաւ, Կիրակոս առանց հակառակութեան եկեալ կանգնեցաւ ի մէջ ահագին ատենին, ինչ որ ամէնուն զարմանքը գրաւեց, ոչ կարէ անձնագլուխ բարս առնել և տալ պէտս երկրորդս, և ամէնքը կը սպասէին որ խուսափէ և հրաժարի, և չէին կարծեր որ նա յանձն առնուր զձեռնադրութիւն և զհովուել կամաց իւրոց (ԿՈՍ. 73)։ Գուցէ կաթողիկոսութեան փափագողներ և անոնց կողմնակիցներ կրնային յուսալ որ Կիրակոսի հրաժարելով գործը նոր կերպարան առնէր, և իրենց համար հաւանականութիւն ստեղծուէր, բայց վերջապէս անդիմադարձ համաձայնեցան, վասնզի երկու խումբերուն մէջ ալ, չեզոք և ոչ մէկէն եղող մէկ մը կ'ընտրուէր, և լոկ առաքինութիւնն ու սրբութիւնն էր, որ յաղթանակ կը տանէր, և ոչ գործունէութեան և ճարտարութեան առաւելութիւնք։ Կիրակոս պարզ վարդապետ էր, հետեւաբար պէտք էր որ մեծ աստիճան և եպիսկոպոսութիւն ալ առնէր կաթողիկոսական օծում ստանալէ առաջ, ուստի նախ այդ պէտքը լրացնելու ձեռնարկեցին, և Մեծոփեցին կը գրէ թէ «զկեղծն արարաք ձեռնադրութեան»։ Զանազան ակնարկներէն կը յայտնուի թէ Յովհաննէս Հերմոնեցին տուած է ծայրագոյն գաւազանը (ԿՈՍ. 84), և Զաքարիա Հաւուցթառեցին եպիսկոպոսութեան աստիճանը եպիսկոպոսներու ընկերակցութեամբ (ԿՈՍ. 78), իսկ կաթողիկոսական ձեռնադրութեան մասնակցած են անշուշտ այն երկոտասան եպիսկոպոսօք աստի և անտի (ԿՈՍ. 52), որոց անունները մի առմի յիշած է Մեծոփեցին, հարկաւ երիցութեան կարգն ալ պահելով, և են. Զաքարիա Հաւուցթառի, Գաբրիէլ Էջմիածնի, Կարապետ Յովհաննավանքի, Յովհաննէս Բջնոյ, Անտոն Խորվիրապի, Յովհաննէս Արճէշի, Յակոբ Կողբի, Մկրտիչ Բագրեւանդի, Մարտիրոս Հաղբատի, Ազարիա Գանձասարի, Զաքարիա Նորավանքի, և Ստեփանոս Սիւնիքի։ Հաւուցթառեցին առաջինն է այդ խումբին, որուն մէջ մտած են Սիւնիքի, Այրարատի և Վասպուրականի եպիսկոպոսներ անխտիր՝ ամէնուն ալ մասնակցութիւնը նուիրագործելու համար։ Ձեռնադրութեան օրը նշանակուած չէ, բայց նկատելով որ ի սուրբ Պենտեկոստէն աւուր, այսինքն է յունիս 4'ին, օրհնած են զաստուածագործակ միւռոնն (ԿՈՍ. 74), կաթողիկոսական ձեռնադրութենէն անմիջապէս ետքը, ամենայն հաւանականութեամբ նախընթաց կիրակին մայիս 28'ին, կաթողիկոսական օրհնութիւնն է տրուած, երբ արծիւ մըն ալ սպիտականեալ թեւօք նստած է ի վերայ գլխոյ Էջմիածնի (ԿՈՍ. 73)։ Ըստ այսմ Համբարձման օրը, մայիս 25'ին, ընտրութիւնը լրացած կ'ըլլայ, և յաջորդ երկու օերուն մէջ ալ վարդապետութեան և եպիսկոպոսութեան կարգերը կատարուած։

**1461.** Վերանորոգեալ աթոռին առաջին գործն եղաւ միւռոնի օրհնութիւնը, ուզելով խորհրդական պէտք մը լրացնել, և միանգամայն ջնջել Սսոյ աթոռին մէջ կատարուած

**ՄԻՒՌՈՆ ԵՒ ՕՐՀՆԱԳԻՐԵՐ**

զեղծումներէն մէկը, որ էր միւռոնի վաճառումը ծանր վճարումներու փոխարէն։ Իբրեւ առաջին բարեկարգական կանոն կը հաշակէ Մեծոփեցին, թէ միւռոնը բաժանեցաւ ընդ ամենայն յաշխարհս Թորգոմեան, և կանոնեցաւ ձրի տալ և ձրի առնուլ, և բարձաւ զաղանդն սիմոնական (ԿՈՍ. 74)։ Միւս այլ կարեւոր գործն եղաւ Աղթամարի աթոռին կապանքը կամ բանադրանքը վերցնել, որ սկսած էր Գրիգոր Պահլաւունիի կաթողիկոսութեան սկիզբը (§ 929), և որով զբաղեր էին Գրի-

*գոր Անաւարզեցի* (§ 1203), *և Ցակոբ Սսեցի կաթողիկոսները* (§ 1398)։ *Արձակումը աւելի ընդարձակ իմաստով տարածուեցաւ յընդհանուր տեղւոյ Հայոց ազգիս, արձակելով զամենայն կապեալս և զբանադրեալս յանէծիցն* (ՁԱՄ. Գ. 488), *ինչ որ պահանջ մըն էր Սսոյ վերջին կաթողիկոսներուն աջ ու ձախ նզովքներ տեղացուցած ըլլալուն համար, որոնք անէծիւք նզովից և բանադրութեամբ կողմանց աշխարհս մեր յայն* (ԿՈՍ. 57), *և պէտք էր ընդհանուր արձակումով մը բոլոր սիրտերը հանդարտեցնել։ Աղթամարի արձակումը յատկապէս յիշուած է, «Աղթամարայ կաթողիկոսն տէր Դաւիթ» բացատրութեամբ* (ՁԱՄ. Գ. 488), *ուսկից ոմանք հետեւցուցին թէ ժամանակին կաթողիկոսը Դաւիթ եղած ըլլայ* (ՁԱՄ. Գ. 467), *մինչ Զաքարիա ըլլալը յայտնի է։ Իսկ Դաւիթի մը անունին յիշուիլը, կրնայ թէ առաջին հակաթոռ Դաւիթ Թոռնիկեանի վրայ մեկնուիլ* (§ 929), *և թէ վերջին Դաւիթ Գուրճիպէկեանին, որ Տաթեւացիին ընդդիմացաւ և զայն հալածեց* (§ 1400)։ *Աթոռոյ փոխադրութիւնը և Վաղարշապատի ժողովին վճիռը և նորընտիր կաթողիկոսին պաշտօնը ծանուցանող օրհնութեան գիրեր յղուեցան Աղուանից կաթողիկոսութեան և Երուսաղէմի պատրիարքութեան, և բովանդակ Հայաստանի և Կիլիկիոյ և Փոքր-Ասիոյ վիճակներուն, և ուր ուրեք Հայ գաղթականութիւններ հաստատուած էին, և այսպէս Էջմիածնի վերանորոգեալ աթոռին անունն ու իշխանութիւնը բոլոր աշխարհի մէջ լրուեցաւ, և 1441'էն սկսելով յիշատակագիրներ կը սկսին ի կաթողիկոսութեան տեառն Լուսաւորչի աթոռոյն տէր Կիրակոսի բացատրութիւնը գործածել* (ՓԻՐ. 124)։ *Իսկ հայրապետական կոնդակները գրուած էին այս սկզբնաւորութեամբ. Անաթեմ անէծին Աստուծոյ, Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, եւ Կիրակոս ծառայ ծառայից Աստուծոյ և Յիսուսի Քրիստոսի, ողորմութեամբ և շնորհօք նորին կաթողիկոս աթոռոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, և Վաղարշապատու սուրբ Էջմիածնի և ամենայն Հայոց* (ՁԱՄ. Գ. 488), *որ սովորական մակագրութիւններէն շատ չտարբերիր։*

**1462.** *Օրհնութեան կոնդակներուն կարգին յիշուած կը տեսնենք, թէ դրկուեցաւ նաեւ աթոռոյն Սսոյ, տէր տէր Գրիգոր Մուսաբէգեանց* (ՁԱՄ. Գ. 483)։ *Չենք կրցած ստուգել այդ տեղեկութեան առաջին աղբիւրը, որ մեծ նշանակութիւն ունի Կիլիկիոյ աթոռին դիրքը ճշդելու։*

**ԿԻԼԻԿԻՈՅ ԴԻՐՔԸ**

*Եթէ Մուսաբէգեանց մտադիւր ընդունեցաւ Կիրակոսի օրհնութեան կոնդակը, ուրեմն ոչ միայն կամակից էր Վաղարշապատի ժողովին, այլ ինքզինքը ենթարկած էր անոր գերագահ իշխանութեան, որով անեղի չէր միար Կիլիկիոյ աթոռը հակաթոռ նկատելու, ինչպէս որ ազգը նկատեց բաւական երկար միջոց մը, մինչեւ երկու աթոռներուն մէջ համաձայնութիւն հաստատուիլը։ Հայերը ազգովին և իւր կաթողիկոսով համէջադաւան ցուցնելու մարմաջը, որ Չամչեանի հետեւողութեամբ Մխիթարեան գրիչներու մեծ նպատակն է եղած, Մուսաբէգեանցի անձին վրայ մեծ կարեւորութիւն դրած է, և աւելորդ պէտք չէ նկատուի, եթէ այստեղ միջանկեալ կերպով մենք ալ քանի մը դիտողութիւն աւելցնենք։ Իրենցմէ ոմանք Մուսաբէգեանցը անկանոն ընտրուած և ոչ օրինաւոր կաթողիկոս ցուցնել ուզած ատեն* (ՁԱՄ. Գ. 486), *ուրիշ մը զայն իբրեւ օրինաւոր աթոռի տէր, և Վիրապեցին հակաթոռ կաթողիկոս կոչելու կը հասնի* (ԸՍՏ. 248), *և վերջերս ուրիշ մըն ալ Մուսաբէգեանցը մինչեւ 1450 օրինաւոր կաթողիկոս ցուցնել կը ճգնի* (11 ԱՄՍ. 467)։ *Մենք իրաւունք կ'ունենայինք իրարու հակասակ կարծիքները զիրար եղծանող ըսելով, խնդիրը զանց ընել, սակայն պատմական եղելութիւնները լուսաբանելու, պարտքն ալ կը զգանք։ Մուսաբէգեանցի անձին մասին որոշ և ստոյգ տեղեկութիւնները կը պակսին, որ կարենանք բացարձակ կերպով բան մը հաստատել, ուստի պարտաւորեալ կցկտուր ակնարկները մօտեցնելով պիտի քաղենք պատմական եզրակացութիւնները։ Անոնք որ Կիլիկիոյ մասնաւոր աթոռը՝ ոչ թէ Կարապետ Եւդոկիացիէ, այլ Գրիգոր Մուսաբէգեանցէ կը սիրեն սկսիլ, աթոռին աւելի փայլ մը տալու փափաքով, Մուսաբէգեանցի և Եւդոկիացիին մէջտեղ Յովսէփ կաթողիկոս մը կը դնեն, Մաղա-*

*քիս դպիրին յիշատակագիրէն քաղելով* (ՍԻՍ. 218)։ *Այդ Ցովսէփը միեւնոյնը պէտք է ըլլայ որ Վանկացիէն եւսյն ալ կաթողիկոսական աթոռը ձեռք ձգելու աշխատեցաւ* (§ 1442), *և եթէ առիթ գտաւ իր ոտնձգութիւնները նորոգել, անշուշտ այլեւս Մուսաբէգեանց չկար, և բնական եզրակացութեամբ, և ոչ թէ մտացածին կարծիքով, կը հետեւի Մուսաբէգեանցի կամ մեռած և կամ տեղը լքած և հնացած ըլլալը։ Մենք դժուարութիւն պիտի չհանէինք սպանուեան պարագան ալ ենթադրել, և վեց սպանեալ կաթողիկոսներէն ետքը* (ԿՌՍ. 55), *եօթներորդ մըն ալ աւելցնել այդ շարքին, ինչ որ Աջին գողութեան կամակից Կիլիկեցի եպիսկոպոսներուն նպատակէն* (§ 1449) *օտար պիտի չըլլար։ Առանձին մտադրութիւն պէտք էր դարձնել յիշատակագիրէ մը առնելով եղած հրատարակութեան վրայ, թէ կաթողիկոսութիւնը տեառն Հենգ ամ խոփանեալ Հռոց է մայրաքաղաքն Կիլիկիոյ, այսինքն ի Սիս* (ՀԱՑ. 575), *եթէ ստուգած չըլլայինք, թէ Ալիշան, որ առանց աղբիւրը ցուցնելու Անտոնեանց մատենադարանին մէջ գտնուող յիշատակարան մը կը հրատարակէ, պարզապէս թիւրիմացութեան զոհ գացած է, տեառն Հենգ կարդալով, ինչ որ բնագիրին մէջ յայտնապէս ԱՆ Հենգ ամ խոփանեալ Հռոց գրուած է* (ԾՇՏ.), *որով աւելորդ կը դառնան նոր գրողի մըն ալ դիտողութիւնները* (11 ԱՄՍ. 466)։ *Արդ եթէ 1147'էն առաջ, Հենգ ամ խոփանեալ Հռոց Սսոյ աթոռը, այսինքն դահակալ չունեցաւ, ուրեմն Մուսաբէգեանց ոչ եւս կ'ապրէր կամ ոչ եւս կաթողիկոս կը ճանչցուէր, և մտացածին չէ 1441'էն այս կերպ կամ այնկերպ Սսոյ աթոռը դադարած և վերջացած ըսել։*

**1463.** *Երկու կտորները յառաջ կը բերուին ցուցնելու թէ 1444'ին և 1450'ին սակայն Մուսաբէգեանցը կենդանի էր, բայց չենք իմանար թէ ինչ օրինաւորութեան փաստ կրնայ քաղուիլ Մուսաբէգեանցի կենդանութենէն, քանի որ նա ազգային ժողովով գահընկէց հռչակուեցաւ, իսկ կենդանի մնալն ալ օրինաւոր ըլլալ ըսել չէ։ Բացատրի պէտք է դիտել տանք, թէ 1444'ին Գրիգորի և Կիրակոսի միանգամայն կաթողիկոս ըսուիլը հարկաւ Մուսաբէգեանցը չցուցներ, վասնզի ի Կիլիկիա և ի Վաղարշապատ յաւելուածները՝ ամբողջ պատճէնին ընդօրինակութեամբ չեն հաստատուած* (11 ԱՄՍ. 466)։ *Միեւնոյն 1444 տարին և միեւնոյն սահմանակցութեան մէջ գրուած յիշատակարան մը Տեառն Գրիգորի և տեառն Կիրակոսի կաթողիկոսութիւնները միանգամայն կը յիշէ* (ՓԻՐ. 133), *բայց Գրիգորը՝ Ջալալբէգեանցն է և ոչ թէ Մուսաբէգեանցը, և այդ երկու անուններու զոյգ գործածուիլը սովէպ կը տեսնուի մինչեւ Կիրակոսի մահը, թէպէտ վերջինս հրաժարած ու քաշուած էր։ Իսկ 1450'ին գրուած կարծուած նամակը ճիշդ այդ թուականը չի կրեր, զի Հայոց ՌՊՂԹ թուականը* (11 ԱՄՍ. 468) *1450 չէ այլ 2450, որուն հասնելու ալ յոյս չունինք։ Իսկ եթէ ըսեն թէ սխալմամբ գրուած կամ տպուած է, պէտք է ընդունիլ որ սխալէն ալ ուղիղ հետեւանք չելլեր։ Ուրիշ պարագաներ ալ նկատելի են այդ յառաջ բերուած գիրին մէջ։ Գիրը կ'ուղղուի սրբոյ հօրն Եւգինեայ տասնչորրորդի. իսկ Եւգինէոս Դ 1450'էն երեք տարի առաջ 1447'ին մեռած էր, ինչ որ հնար չէր որ երեք տարի ետքը իմացուած չըլլար Սիս կամ Գահիրէ։ Նոյն թուղթին մէջ կ'ըսուի, թէ Սարգիս և Թովմաս վարդապետները իրենց Գրիգոր ղրկած ըլլայ, մինչ անոնք Վանկացիէն ղրկուած էին, և Ալբերդոս կրօնաւորն ալ ոչ 1450'ին այլ 1440'ին նամակը տանողն է* (ԱՁԱ. 104)։ *Անոնք որ 1450'ին Մուսաբէգեանցը կենդանի, և Եպիսկոպոս Եպիսկոպոսաց Երկու Հայաստան աշխարհաց կ'ուզեն ընդունիլ, պէտք է նաեւ մեկնեն, 1447'ին Կարապետ Եւդոկիացիին Եգիպտոսի սուլտանին հրովարտակով Սսոյ մէջ կաթողիկոս նստած ատեն, ինչ կերպով Մուսաբէգեանց կրնար այդ գիրքը պահել Գահիրէի մէջ, երբ արդէն ուրիշ մը տիրող պետութենէն ճանչցուած էր։ Պէտք չէ մոռնալ եւս որ Երկու Հայաստան աշխարհաց բացատրութիւնը երբեք Հայոց սովորական չէ եղած, որոնց պաշտօնական ոճն է Ամենայն Հայոց բանաձեւը։ Ուրիշ մանրամասնութիւններու մէջ մտնել չուզելով ալ՝ կրնանք եզրակացնել, թէ կեղծ գրուած մըն է իբր փաստ յառաջ բեր-*

ՍՍՈՅ ԱԹՈՌԻՆ ՎԱԽՃԱՆԸ

*ուածը և Կաֆացի լատինամոլներու յերիւրուած մը, որ միանգամայն անվստահութեան մեծ կասկածներ կը տարածէ Փլորենտիոյ Լատինական մատենադարանին, և ուրիշ պապական դարաններու մէջ պահուած գրութեանց վրայ։*

**1464**. *Մեզի անծանօթ չէ, որ նոյնիսկ Կիլիկիոյ աթոռին յետին կաթողիկոսներ յաւակնութիւն ունեցած են, իրենց աթոռը ուղիղ գիծով օրինաւոր յաջորդութիւն ցուցնել, և էջմիածնի աթոռը ապօրինի կամ ապստամբ հռչակել։*

ՍՍԵՑՈՑ ԿԱՐԾԻՔԸ

*Սիմէոն Սեբաստացին պատմական յիշատակներ կը քաղէ, ցուցնելու համար թէ ազգը իբր օրինաւոր կաթողիկոսներ ճանչցաւ Հռոմկլայ և Սիս նստողները՝ և* Եղբօրն Գրիգորի մինչեւ ցՅովսէփ կաթողիկոսն, *անընդհատ յաջորդութիւն մը կը կազմէ* (ԱԶԱ. 25), *օրինաւոր կաթողիկոս կարծելով ինքնակոչ Յովսէփն ալ* (§ 1453)։ *Ոչ ոք դժուարութիւն ունի այդ չափը ընդունիլ, սակայն այդչափը չբաւեր հաստատել, թէ* այնմհետէ մինչեւ ցայսօր ժամանակիս կայ հաստատ հայրապետութիւն աթոռ ի Սիս, և աթոռն Լուսաւորչին Այն է, աստ բնակեցայց, զի հաճեցայ ընդ դա (ԱԶԱ. 12)։ *Աջի անյայտացումը* (§ 1449), *և ազգային ժողովը* (§ 1453), *և ազգովին տրուած վճիռը* (§ 1458), *օրինաւոր գործողութիւններ են, որք չեն կրնար ջնջուիլ, Սիմէոնի խօսքով, թէ* անհնազանդ եղեալ ևս Արեւելեայց աթոռոյն Լուսաւորչի աթոռոյն, ձեռնադրեցին ըստ կամաց իւրեանց զԿիրակոս կաթողիկոսն Խորվիրապեցին (ԱԶԱ. 13), *կամ Եփրեմի ըսելովը, թէ.* Ի սա է վարդապետաց գլուխ ամբարշտեալ Կիրակոս անուն, զապստամբութիւն խորհէր ի սրբոյ աթոռոյս Սսոյ (ԱԶԱ. 53)։ *Մանաւանդ որ, ինչպէս պատմեցինք, Կիրակոս ինքն ոչ ապստամբութիւն խորհեցաւ, և ոչ իրեն համար աշխատեցաւ, այլ ազգովին կատարուած որոշման հպատակեցաւ։*

**1465**. *Կիրակոսի կաթողիկոսութիւնը բարեգուշակ յաջողութիւններով սկսաւ էջմիածինի մէջ։ Եկեղեցական իրաւասութեան և նուիրապետական բարեկարգութեան տեսակէտէն, այս ընտրութեամբ կրնար ջնջուած և անհետացած նկատուիլ աթոռներու բաժանման խնդիրը, Սիս դադարած էր իրօք, և Աղթամար համաձայնած և օրհնուած էր, և էջմիածնի կաթողիկոսը միահեծան գլուխ էր ճանչցուած ա-*

ԱԿՆԿԱԼԵԱԼ ՕԳՈՒՏՆԵՐ

*ռանց ընդդիմադիրներու և հակաթոռներու։ Մուսաբէգեանցի հրապարակէ հեռացած կամ մեռած կամ ձեռնթափ եղած ըլլալը՝ այլեւս պատմական ստուգութիւն մըն է Սսոյ աթոռին հինգ ամ խափանուելովը, և ուրիշ փաստի պէտք չկար այդ մասին։ Աղթամարն ալ այն դիրքը առած էր, ինչ որ ունէր Աղուանից կաթողիկոսը, որոշեալ սահմանի մէջ ազատ և ինքնուրոյն իրաւասութիւն գործածող, սակայն իրմէ վեր գերագահ աթոռակալ մը ճանչցող էջմիածնի մէջ։ Եթէ Սսոյ աթոռը խափան ջնջուէր ու դադարէր, կամ թէ, իբր նախկին աթոռին յիշատակ էջմիածնի գերագահութեան ներքեւ կաթողիկոսական աթոռ մը պահուէր Աղթամարի նմանութեամբ, ամէն առթի մէջ Հայաստանեայց եկեղեցւոյ նուիրապետութեան կազմը և Ամենայն Հայոց հայրապետութեան իսկական կերպարանը անեղծ և անխախտ պահուած կ'ըլլար, և երկրորդական կաթողիկոսութեանց գոյութիւնը անոր վնաս չէր բերեր, ինչպէս չէին բերեր Վրաց և Աղուանից կաթողիկոսութիւնները, եթէ չուզենք իսկ ըսել, թէ աւելի ալ կը բարձրացնէին։ Կիրակոսի անձին վրայ գալով, նա հայրապետական աթոռին վրայ ալ պահեց իր ճգնողական և առաքինական կեանքը, և ամէնքը* տեսանէին զերանելի այրն Աստուծոյ ի վերայ հնութեան գահոյն և զ[illegible] մշտնջենաւոր ուրախութեամբ (ԿԱՍ. 76), *որ ընդհանուր պատկառանք և յարգանք կը բերէր վերանորոգեալ աթոռին վրայ։ Ըստ այնմ համակրութիւնն ալ կը չափնար հետզհետէ, և որովհետեւ մինչեւ այն ատեն բոլորովին լքեալ և անխնամ մնացած էր վանքն ու աթոռը, զուրկ ամէն պէտքերէ,* Աստուածապաշտ ազգս Հայկազեան, Արարատ և կողմն Վասպուրական, *յորդորուեցան ամէն տեսակ գոյքերով ճոխացնել աթոռը, և* մարմնաւոր պէտոյիւք և անասնօք և արծաթեղէնօք լցին զաթոռն (ԿՈՍ. 75)։ *Այս նպատակին հասնելու համար պէտք էր որ աթոռին մէջ կանոնա-*

*ւոր մատակարարութիւն հաստատուած ըլլար, և այս կողմէն ալ Կիրակոս ընդհանուր ակնկալութենէ վեր գտնուեցաւ, և կրցաւ արթուն և ազդեցիկ խնամք տարածել ամէն ճիւղերու վրայ, և չինարարութեամբ ալ զբաղիլ, քան որչափ ինչ կրնար սպասուիլ Վանատանի խստամբեր ճգնաւորէն։ Եպիսկոպոսներուն շարքին տեսանք Գաբրիէլ եպիսկոպոս մըն ալ Էջմիածինի անունով* (ԿՈՍ. 52), *ինչ որ կը ցուցնէ թէ աթոռին թափառած ատեն, Էջմիածինի վանքը ունէր վերակացու եպիսկոպոս մը, որ Վաղարշապատի ալ թեմակալն էր անշուշտ։ Բայց եթէ Էջմիածին բոլորովին լքեալ չէր, պարզ եպիսկոպոսի մը ներկայութիւնը բաւական չէր պահել անոր բարձր դիրքը և պահանջուած կացութիւնը։ Այսպէս անցան Կիրակոսի կաթողիկոսութեան սկիզբները, տարի մը կամ քիչ աւելի։*

**1466**. *Սակայն կամաց կամաց սկսան գլուխ երեւցնել նախանձոտ կիրքերը և*

ԳՐԳՌՈՒԹԵԱՆՑ ՍԿԻԶԲԸ

*խուլ հակառակութիւնները, նորահաստատ կացութեան դէմ դժգոհութիւններ, և գոհունակութիւն չգտած բուռն ձգտումներ։ Այդ դժգոհ երեւոյթներ յառաջ եկան Սիւնիքի կողմէն և Տաթեւեան աշակերտութենէն, և դիւրին է որ Էջմիածինը չէնցնող Արարատի և Վասպուրականի հետ, Սիւնիքը չէր յիշուած։ Կիրակոս որչափ ալ 32 տարիէ իվեր Արարատ հաստատուած, սակայն վերջապէս Վասպուրականցի մըն էր, Վասպուրականցիներէ պաշտպանուած, և անոնց կողմէն առջեւ մղուած, ինչպէս Մեծոփեցին Ակոռի հանդիպելուն առթիւ դիտել տուինք* (§ 1459)։ *Բայց որ աւելին է, Կիրակոսի շուրջը խմբուեցան բոլոր Վասպուրականցիներ, Թովմաս Մեծոփեցին ինքն ալ ազդեցիկ և գլխաւոր դեր մը ստացաւ հայրապետանոցին մէջ։ Թէ ոչ ամէն, գոնէ շատ գործերու գլուխ Վասպուրականցիներ անցան, շահ և օգուտ անոնց բաժին սկսաւ ըլլալ, և Սիւնեցիներ և Տաթեւական խումբը երկրորդական շարքը մղուեցան, մինչ իրենք էին Սրբութեան կեդրոնը, իրենք էին որ նոյն իսկ Վասպուրականցիներուն շարժում էին տուեր, թէ 12 Վասպուրականցիներուն Տաթեւ գալուն, և թէ Եռամեծ Տաթեւացին Վասպուրական երթալուն առիթով։ Մեծոփեցին ալ զգալ կու տայ այդ կացութիւնը, երբ պարծենալէն ետքը թէ* «ամենայն քարոզութեամբ և շնորհօք զարդարեալ էր ազգս Հայոց» (ԿՈՍ. 76), *և թէ* «զարդարեալ էր սուրբ կաթողիկէն», *կը յաւելու, թէ* «ամենեքեան երանի տային կողմանց վարդապետաց և քահանայից ծովաբոլորին» (ԿՈՍ. 77), *այսինքն է կը գովէին Վասպուրականի* կողմանց *և Վանայ* ծովաբոլորին *պատկանող վարդապետները, որք այդ բարեկարգութեանց գործիչ կը նկատուէին։ Խուլ դժգոհութիւնները որոնք 1442 տարիէն սկսեր էին, յայտնի խօսուիլ սկսան 1443'ին սկիզբները, և պարագլուխ կանգնեցաւ Մարկոս եպիսկոպոս Վրաստանի, Հերմոնեցիին աշակերտներէն, որ Վաղարշապատի ժողովին չէր գտնուած։ Իրեն միացաւ Սատուածատուր վարդապետ Սաղմոսավանքէն* (ԿՈՍ. 77), *որ ցաւած էր որ* «մինն է յանանոց նմանուորեցէն», *ինչ որ Մեծոփեցին* «անգիտութեան» *մէջ կը համարի,* «զոր օրինակ կաթողիկոսն և վերակացուն նորին», *Գաբրիէլ եպիսկոպոս Յովհաննավանքի և Կիրակոս վարդապետ Ուշտունի* (ԿՈՍ. 75)։

**1467**. *Տժգոհներու խումբը պէտք ունէր իրեն ազդեցիկ կողմնակիցներ ճարել, և Կիրակոսը նետելու համար պատճառներ ունենալ։ Առաջին ընտրութեան ժամանակէն երեք*

ԿԻՐԱԿՈՍԻ ԴԷՄ

*մրցակից ընտրելիներ կային Սիւնեցւոց կողմէն, Յովհաննէս Հերմոնեցին, Զաքարիա Հաւուցթառեցին և Գրիգոր Արտազեցին, սակայն միեւնոյն կուսակցութենէն՝ երեք մրցակից ընտրելիներ գտնուիլը տկարացուցած էր անոնց կողմը։ Երեքին մէջէն նախադասելի կ'երեւէր Արտազեցին, սակայն միւս երկուքը աւելի ազդեցիկ էին, և անոր կաթողիկոսանալը չուզեցին* «վասն տեղեկութեան որ ոչ զայն ունէին»։ *Բայց նոր կացութեան առջեւ հարկաւ մեղմացած էին կիրքերը, մանաւանդ որ Հերմոնեցին* «յայն ժամանակին խլացեալ էր ականջօք» (ԿՈՍ. 78), *և Հաւուցթառեցին արդէն եպիսկոպոսներուն երիցագոյնը, այլեւս տկարացած էր տարիքին բերմամբ։ Մարկոս և ընկերներ առաջին անգամ ուզեցին այս երկուքը վաստկիլ, ծերունի-*

ները համոզելով թէ այլևս պէտք է որ իրենց ակնկալութիւնները վար դնեն և Արտազեցին կաթողիկոսացնելու համաձայնին իրենց կողմը զօրացնելու համար։ Առաջ դիմեցին Հաւուցթառեցիին, մեղադրելով իսկ զայն ,թէ դու եղեւ էր Կիրակոսը կաթողիկոս, ակնարկելով անոր ձեռնադրութեան նախագահելուն, իբր այն թէ ասով փորձանքին պատճառ եղած ըլլար։ Անիկայ համոզելէ ետքը, իրենց ընկերացուցին Շմաւոն Տաթևի եպիսկոպոսը, և Հաւուցթառեցին գլուխ կանգնեցաւ խումբին, որ յորոցցեւ էնոյ ու վարդապետն Յովհաննէս Հերմոնեցին (ԿՈՍ.78), որ իսկոյն համաձայնեցաւ, և ասելէ թէ զերեալն և զտեսեալն ոչէ մէկէն ոտք հանեց Կիրակոսի գահընկէցութեան գործին հետևելու։ Կը յիշուին պատճառներն ալ ճարել, բայց անարժան գործի մը համար Կիրակոսը ամբաստանել չէին կրնար, և կը խոստովանէին իսկ թէ հրամանաւ Լուսաւորչին հանգոյն է։ Ուստի գործը օրինականութեան ձևին թափելով, ուզեցին ըսել թէ կաթողիկոսութիւնը անվաւեր է, և օրինաւոր կաթողիկոս չէ։ Այս երեսէն գտած պատճառանքնին երկու եղան, մէկը թէ ի կողմանէն յԱղուանից է, որ ի բազում ժամանակաց հետէ բանադրեալ էն (ԿՈՍ.77), ուսկից կը հետևցնէին թէ ոչ է կրթեալ, և ոչ է ընտրելոյ (ԿՈՍ.79), իբր զի բանադրանքի ներքև եղողներուն պաշտած խորհուրդները թերի և անվաւեր կը համարուէին։ Իսկ միւս պատճառն էր, թէ օրէն էր ի կաթողիկոսաց եպիսկոպոս լինել, և ոչ յեպիսկոպոսաց կաթողիկոս ձեռնադրել (ԿՈՍ.79)։ Այդ պատճառներէն առաջինը ընդհանուր առմամբ կամ առերևոյթ կերպով միայն կրնար խօսուիլ, վասն զի ընդհանուր քրիստոնէութեան մէջ ընդունուած է անարժան պաշտօնէին կատարած մկրտութիւնն ալ, և գեղծմամբ միայն կրկնամկրտութիւններ կ'ըլլային, ինչպէս Ռոնիթորներն ալ կը կատարէին Հայերուն վրայ։ Իսկ երկրորդ պատճառը թէև եպիսկոպոսութեան վաւերականութեան վրայ չկրնար տարածուիլ, քանի որ Նիկիական կանոնը մեր եկեղեցին ալ ընդունած է, գոնէ ազգային և կանոնական սովորութեան փաստ կրնար ըլլալ, թէ ընկալեալ օրէնք է, ձեռնադրեալ եպիսկոպոսներուն մէջէն կաթողիկոս ընտրել և ոչ թէ եպիսկոպոս չեղող եկեղեցականներուն մէջէն։ Ազգային պատմութեան մէջն ալ շատ ցանցառ են այդ կանոնին բացառութիւնները, որոնք աւելի եւս ընդհանրացած կանոնը կը հաստատեն։ Կիրակոսի դէմ յարուցուած խնդիրն ալ, միևնոյն սովորութիւնը կը հաստատէ, որչափ ալ յայտնի է թէ բողոքելու իրաւունք չունէին անոնք, որոնք իրենց ձեռքովը բացառութիւնը նուիրագործած էին։ Անցողակի նշանակուած է երրորդ կէտ մըն ալ, թէ հերձուածող է, զի զծառն հիւանդոյ բերեալ է ի Կոստանդնուպօլսէ (ԿՈՍ.79), որ վերջին օծումի ձէթ գործածելու վրայ պիտի մեկնուի, սակայն ոչ առաջ և ոչ ետքը Մեծոփեցին այդ մասին լուսաբանութիւն չտար։

**1468**. Հարկաւ դաւադրութիւնն ու աղմուկը ծածուկ չէին կրնար մնալ, արդէն Հերմոնեցիին հաւաքած խումբն ալ շատ գաղտնութեամբ չէր գործեր, այլ համարձակ էջմիածին կու գար բռնութեամբ իր միտքը գործադրել։ Առաջ կեղծ բարեպաշտութեամբ կը մտնէին ի սուրբ տաճարն Միածնին, բայց բռնութեամբ և արհամարհութեամբ լցեալ։ Իսկ Կիրակոս, որ դողայր յահէ նոցանէ, էջմիածինը կը թողու, և փախստեայ արարեալ մտանէ ի տուն ընտանեաց մեծ գողտագողի. սակայն իրեն վրայ եկողները չեն հանդարտիր, և կը հետապնդէին որոնեալ աստ և անդ, մինչև որ տեղը իմանալով գտէն զնա, և իրենց հսկողութեան ներքև պահեցին, մինչև որ առեալ տարան առ բռնաւորն Աղուղ, որ է Երևանի Նաղուպ պէկը։ Կաթողիկոսի մը դատաստանն ու գահընկէցութիւնը ազգային ժողովի իրաւունքն էր, և ոչ օտարազգի տիրապետողին, սակայն ոչ միայն սկիզբէն իվեր վարժուած էին քաղաքական իշխանութեան վճռով գործել, այլ սոյն այս Նաղուպ պէկն էր, որ Վաղարշապատի ժողովին դիւրութիւն և պաշտպանութիւն էր ընծայած, և նորա հովանաւորութեամբ Կիրակոսի կաթողիկոսութիւնը հաստատուած և հռչակուած էր, և փոփոխութիւնն ալ հնար չէր առանց անոր հաւանութեան կա-

ԿԻՐԱԿՈՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ

տարել։ Եաղուպի առեանին մէջ առջեւ կ'անցնի Հերմոնեցին գործը բացատրել, և կ'ըսէ, թէ Կիրակոս ուր է ձեռնադրեալ, ուր է քննեալ, այնպէս որ եթէ կամի դու, որ հարկաւ յաջորդ այդ նորա էր, կամ ընտրեալ այս է, զի ձեռնադրեաց, և նոր եպիսկոպոս և կաթողիկոս յետնադրեաց (ԿՈՍ.79)։ Եթէ իրօք այսպէս խօսեցաւ Հերմոնեցին, պէտք է ըսել թէ զառամած և ցնորած էր, ապա թէ ոչ աւելի անտրամաբան խօսք մը չէր կրնար ըսել Տաթեւեան դպրոցին մեծ վարժապետը։ Եաղուպ խսկ կրցաւ անոր երեսը զարնել, թէ Կիրակոսի եպիսկոպոսութիւնը ու կաթողիկոսութիւնը նոյն իսկ իրենք էին կատարած, որուն Հերմոնեցին չկրնալով պատասխան տալ, ստիպեալ ուրանայ զձեռնադրութիւն, և Թովմէն և ընկերք նորին կատարեցին, կ'ըսէ, ուզելով իմացնել թէ Մեծոփեցիին և Վաղարշապատեցւոց ազդեցութեան ներքեւ կատարուեցան ձեռնադրութիւնները։ Կիրակոս լուռ կայր և անմռունչ, հարկաւ իր սրտին մէջ ցաւելով այդ ստախօսութեան վրայ, և միայն Մեծոփեցիին աշակերտներէն Կարապետ վարդապետ մը և ազգականներէն Ծերուն անուն երիտասարդ մը, կը համարձակին պատասխանել, թէ բողոքողները ոչ են ճշմարիտ, այլ խաբեբայք (ԿՈՍ. 80), սակայն բողոքողներու խումբէն Ստեփանոս վարդապետ մը, հաւանաբար Եղեգեցին (ԿՈՍ. 87) եհար զբերան Ծերունի, և լռեաց առժամն։ Եաղուպ բարկացեալ բողոքողները կը մերժէ, սակայն Հաւուցթառեցին առանձինն առնելով, և անհամար արծաթ տալով, Եաղուպը կը համոզէ, որ ինքն վրան չառնէ կաթողիկոսն արքայն հանէն և ոչ հանէն, և թող տայ ազգին որ ուզածնուն համեմատ գործեն, և իրենց հաւնած անձը, Գրիգոր Արտազեցին, կաթողիկոս ձեռնադրեն (ԿՈՍ. 80)։ Այսպէս կը վճռուի Կիրակոսի գահընկէցութիւնը և Գրիգորի կաթողիկոսութիւնը, և յիշատակագիրը իրաւունք ունի ըսելու. Գրիգոր եպիսկոպոս Մոկացի նստաւ թագաւորօք և զօրօք (ՍԱՄ. 175)։

**1469**. Այդ գործողութեանց ոչ մի պարագայն կանոնական՝ և ոչ մի պատճառանքը հիմնական չըլլալուն, բացարձակ առամբ հնար չէր Կիրակոսի կաթողիկոսութիւնը դադարած և Գրիգորը իրաւամբ կաթողիկոսութեան անցած համարել։ Սակայն մեր պատմագիրներէն և ժամանակագիրներէն և յիշատակագիրներէն ամէնքն ալ 1443'ին կը դնեն Գրիգորի կաթողիկոսութիւնը, և Կիրակոսի միայն երկու տարի կաթողիկոսութիւն կուտան, ինչպէս Մեծոփեցին ալ կը գրէ, թէ սուրբ հայրապետս տէր Կիրակոս երկուս ամ նստաւ յաթոռ պատրիարքութեանն ի կաթողիկէին (ԿՈՍ. 75)։ Մենք ալ պիտի հետեւինք այդ կարծիքին, և այս կէտէն դադարեալ նկատելով Կիրակոսի պաշտօնավարութիւնը, իրեն յաջորդին անունով պիտի մակագրենք մեր յօդուածները։ Այս միտքին մեզ մօտեցնողը ոչ թէ բացարձակ արդարութեան սկզբունքն է, զի ոչ մի իրաւունք կրնայ յառաջ բերուիլ Կիրակոսի պաշտօնանկութիւնը արդարացնելու, այլ միայն իրական եղելութեան հիմամբ է որ այդ տեսութիւնը կ'ընդունինք։ Կիրակոս որ պաշտօնին հետամուտ չէր, բնաւորութեամբ ալ անկէ հեռու էր, և առաքինութեամբ ալ պնդելու կամք չունէր, երբոր տեսաւ զայրացած փոթորիկը, և եկեղեցական դասուն ազմկալից հակառակութիւնը, ոչ միայն չարժուած մը չըրաւ և բառ մը չարտասանեց իր իրաւունքը պաշտպանելու և հակառակորդներուն լըրբութիւնը զսպելու, այլ կարծես թէ ուրախանալով որ անտանելի բեռէ մը կ'ազատի, խսկոյն ձեռնթափ եղաւ գործէն, պահանջուած հրաժարականը յօժարակամ տուաւ, և պաշտօնապէս պաշտօնէ քաշուեցաւ, թողլով ասպարէզը իր հակառակորդներուն, որպէսզի գործեն ինչպէս կ'ուզեն, և աթոռը յանձնեն ում կը հաճին։ Միւս կողմէն գործին գլուխը գտնուողները, ազգային ժողովի կերպարանը կուտային իրենց ձեռնարկին, և համախումբ որոշումով դադարեալ կը հռչակէին մէկը և աթոռ կը բարձրացնէին միւսը։ Այդպիսի պարագաներուն մէջ, ոչ թէ ներքին արդարութեան փաստը՝ այլ ձեւական օրինաւորութեան պայմանն է, որ որոշման վաւերականութիւնը կը վճռէ։ Եւ Կիրակոս յանիրաւի, բայց ձեւական օրինաւորութեամբ կաթողիկոսութենէ կը դադարէր, և գործը իր յօժար հաւանութեամբ

ԿԻՐԱԿՈՍ ՑԱՆՁՆԱՌՈՒ

կը հաստատէր։ Իսկ ազգային և եկեղեցական տեսակէտէն անհնարին հարուած մը կը տրուէր հայրապետական աթոռին նշանակութեան և ազգային նուիրապետական միութեան, և կը ջնջուէր այն գեղեցիկ սկզբունքը որ երկու տարի առաջ հաստատուած էր Կիլիկիոյ աթոռին դադարմամբ և Աղթամարի աթոռին համաձայնութեամբ։ Այն համերաշխ և գործակից և միացեալ հայրապետութիւնը որ վերստին փայլելու և արդիւնաւորելու սահմանուած էր, նորէն իր բաժանեալ և պառակտեալ դրութեան վերադարձաւ, և մինչև այն օր երկփեղկեալ կաթողիկոսութիւնը եռափեղկեալ կերպարանի փոխուեցաւ, ոչ միայն Աղթամար նորէն գլուխ քաշեց, այլ և Սիս իր դադարած աթոռը համարձակեցաւ վերականգնել, ազգային համերաշխ միութեան և գործակից արդիւնաւորութեան յայտնի վնասներով։ Այն գեղեցիկ խորհուրդները որոնցմով առաջնորդուեցան 1441 տարւոյ գործիչները, շուտով խանգարեցան 1443 տարւոյ աւերիչներով, և ըսել թէ միևնոյն անձերն էին գործիչներն ալ աւերիչներն ալ։

---

# Տ. ԳՐԻԳՈՐ Ժ. ՋԱԼԱԼԲԷԳԵԱՆՑ

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆ ՈՒ ՆԱԽԸՆԹԱՑԸ**

**1470.** Գրիգոր, որ Կիրակոսի տեղ կաթողիկոսութեան կը բարձրանար, որդի էր էր պարոն Ջալալ բէգին (ՓԻՐ. 130), կամ Ճէլալ պէյին, որով ազնուատոհմիկ մէկ մը և պետութեան առջև դիրք ունեցող մէկու մը զաւակ եղած ըլլալը կը յայտնուի, զի ընդհանրապէս պետական շրջանակներու հետ շփում ունեցողներն էին, որ տաճկական պատուանուն և երբեմն տաճկական անուն ալ կը կրէին։ Սովորաբար Մակուցի կամ Արտազեցի կամ Սուրբ-Թադէոսցի ալ կը կոչուի, որովհետև եպիսկոպոս էր Արտազի՝ որ է Մակու քաղաքը, ուր է Սուրբ Թադէոսի մայրավանքը, բայց անհաւանական չէ որ ծննդեամբ ալ նոյն քաղաքէն եղած ըլլայ, թէպէտ ոչ ուրեք յիշուած կը գտնենք։ Աշակերտութիւնը Տաթևեան դպրոցէն էր, Հերմոնեցիին շրջանէն, և իր տոհմային ազնուութեամբ և անձնական գործունէութեամբ շուտով յառաջ եկած էր։ Նախընթաց յօդուածներուն մէջ առէպ իր անունը յիշեցինք, իբր փոխանորդութեան աշխատողներէն մէկը, և նոյն իսկ 1441'ին յարմարագոյն ընտրելիներէն մին նկատուած, որ թերևս յաջողած ալ կ'ըլլար, եթէ նոյն իսկ իրեն կողմնակիցներէն՝ Հերմոնեցիին և Հաւուցթառեցիին նախանձոտ տեսլութիւնները արգելք եղած չըլլային (§ 1457)։ Սակայն վերջապէս երբ Սիւնեցւոց և Վասպուրականցւոց ներհակընդդէմ մրցակցութիւնը յուզուեցաւ, և Սիւնեցիք զօրացան, Գրիգոր իբրև ընտրելագոյն կաթողիկոսացու անհակառակ ամէնէն ընդունուեցաւ՝ Մարկոս Վրաստանցիին մէջտեղ ելնալովը (§ 1467)։ Մենք դիտողութեան արժանի կէտ մը կը սեպենք, որ Մեծոփեցին այդ վերջին շփոթներուն և Կիրակոսի դէմ մղուած հակառակութիւններուն մէջ, նշանակելի դեր մը չտար Ջալալբէգեանցին, թէպէտ կը մեղադրէ անոր յանձնառութիւնը, թէ անիմաստն այն՝ եպիսկոպոսն Գրիգոր, գիտաց է [illegible] իւր եթէ [illegible] գործեաց, ոչ [illegible], այլ հակառակութեան (ԿՈՍ. 81)։ Բայց արդար ըլլալու համար պիտի ըսենք, որ եթէ Գրիգորի ընտրութիւնը տգեղ և դատապարտելի պայմաններու մէջ կատարուեցաւ, որոնցմէ ինքն բոլորովին անմասն չկրնար սեպուիլ, և եթէ իր կաթողիկոսութիւնը ձախող եղելութեանց առիթ ընծայեց, սակայն իր պաշտօնավարութիւնը անօգուտ և վնասակար եղած չէ, վասնզի ինքն է որ [illegible] (ԴԱՎ. 336), և ինքն է դարձեալ որ [illegible] (ՋԱՄ. 19)։ Իբր գովութեան գլուխ աւելցնենք ալ, թէ նախորդ և գահընկէց կա-

*թողիկոսին հանդէպ ալ չուզեց բռնութեամբ վարուիլ կամ նախանձով ճոխանալ, և մարդասիրական ընթացք մը պահեց։*

**1471.** *Հազիւ թէ Զաքարիա Հաւուցթառեցին առատ կաշառքով և համոզիչ խօսքերով Եաղուպ պէկի հաւանութիւնը ստացաւ, նորէն ամէն կողմէ հաւաքուեցան, և Էջմիածնի Մայր Տաճարին մէջ կաթողիկոսական ձեռնադրութեան կարգ կատարեցին Գրիգորի վրայ։ Մեծոփեցին մանրամասնութիւններ չտար, հարկաւ տալու սիրտ ալ չունէր, Պատրիարքէին ընտրեալ, սակայն ոչ է հաշտութեան, այլ է խռովութեան, և կաթողիկոսական օծումը լրացուցին տասուերկու եպիսկոպոսներով, որոնց բոլորը անշուշտ Կիրակոսը ընտրողներն եղան։ Օր և ամսաթիւ գրուած չենք գտներ, սակայն գիտնալով որ Կիրակոս երկու ամ նստաւ (ԿՈՍ. 75), և թէ նախընթաց հակառակութիւնները վարելու յարմարագոյն միջոցը մեծպահքի անզբաղ ժամանակն էր, և հաւաքուելու յարմար միջոցն ալ զատիկէ ետքն էր, Գրիգորի ձեռնադրութիւնը կրնանք դնել Կիրակոսի երկրորդ տարեդարձին առենները, 1443 տարւոյ զատիկէն քիչ ետքը, որ այն տարի կը հանդիպէր ապրիլ 21'ին։ Այդ փոփոխութեան անհրաժեշտ հետեւանքն էր Կիրակոսի հետ Էջմիածինէ հեռացնել Վասպուրականցիները, որ այնտեղ զօրացած էին։ Կիրակոսի անձին դէմ խստութիւն գործադրուած չյիշուիր, վասնզի նա չուզելով տեղի տուաւ, հրապարակէ քաշուեցաւ և գնաց ի տուն [illegible] (ԿՈՍ. 81), որ հաւանաբար բարեպաշտ Վասպուրականցի մըն էր։ Կիրակոսի անընչասիրութիւնն ալ յայտնի ըլլալով զինքն չէին նեղած անիրաւ շահեր տուժելու պատրուակով, բայց խստացած են անոր շուրջը եղողներուն վրայ, և նեղի դրած են [illegible] վարդապետք Էջմիածնի, ամբաստանելով դրամական անհաւատարմութեանց մասին, և մինչեւ իսկ տուգանելու համար մատնել անօրինաց (ԿՈՍ. 82)։ Այս կերպով Կիրակոս Ուշտունի վարդապետէն, զոր անգամ մը յիշեցինք (§ 1466) գանձած են 13,000 դահեկան, և Սարգիս Սալնապատցի վարդապետէն 6,000, իսկ ամբաստանութիւն ընողներն եղած են Զաքարիա և Անտոն եպիսկոպոսներ (ԿՈՍ. 82), որ պէտք է ըլլան Հաւուցթառեցին և Խորվիրապցին (§ 1460)։ Տուգանքի ենթարկուողներէն Կիրակոս յիշուած էր Վասպուրականցի ժողովականներուն կարգին (§ 1453), իսկ Սարգիս ոչ։ Երկուքէն զատ հալածուողներ ալ եղած ըլլալը կը հետեւցնենք Մեծոփեցիին ըսելէն, թէ [illegible] (ԿՈՍ. 82)։ Միայն իրեն մասին բան մը չըսեր, և մենք ալ պիտի հաւանինք հետեւցնել, թէ նա Կիրակոս կաթողիկոսին հետ քաշուեցաւ, և անոր հետ մասնաւոր տուն փակուեցաւ, և ծերունի գահընկէցը չցաւցնելու համար իր մխիթարիչ ընկերին ալ խնայեցին։ Անանուն ժամանակագիրի մը ըսելը, [illegible] և զՍարգիս վարդապետն [illegible] (ԴԱՎ. 485), ոմանք Մեծոփեցիին վրայ ուզեցին մեկնել, գայն նկատելով ժամանակագրութեան հեղինակը (ՓԻՐ. 130), բայց աւելի յարմար է Կիրակոս Ուշտունիի վրայ մեկնել, բաղդատելով Մեծոփեցիին պատմածին հետ (ԿՈՍ. 81)։*

**1472.** *Երբոր Կիրակոսի պաշտօնէ դադարելովը Վասպուրականցոց գործն ու ազդեցութիւնը տկարացաւ, Մեծոփեցի Թովմային այլեւս պէտք չէր մնար Էջմիածին մնալ, և կը գտնենք զինքն Մեծոփ դարձած և վանքին առաջնորդութիւնը ձեռք առած ըստ առաջնոյն։ Ինքն յայտնապէս բան մը չի գրեր, բայց 1443'ին վանահայրութեան վրայ գտնուիլը կը յիշուի (ՓԻՐ. 130), որով շատ երկար մնացած չըլլար Կիրակոսի հետ, և անոր մօտէն հեռացած կ'ըլլայ, տեսնելով որ այլեւս իրեն ընկերակցութեան կամ օգնութեան պէտք չունի, քանի որ Ջալալբէգեանց ոչ մի կերպով չէր խստանար անոր դէմ, մինչեւ իսկ անհակառակ կը ներէր որ Կիրակոս իբրեւ կաթողիկոս պատուուէր ու յիշատակուէր։ Յիշատակութիւններէն ոմանք Վասպուրականի մէջ գրուած են, ուր Կիրակոսի կողմը զօրաւոր էր և կրնար անոր համար պնդել, և Գրիգորի անունը յիշատակել չուզել, ինչպէս են 1446'ին Արճէշ (ՓԻՐ. 153) և Վան (ՓԻՐ. 154), և 1447'ին*

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆՑԻՔ ԵՒ ՍԻՒՆԵՑԻՔ

ԿԻՐԱԿՈՍԻ ԴԻՐՔԸ

Արծկէ (ՓԻՐ. 157) գրուած յիշատակարանները։ Սակայն ասոնց հետ կան 1445'ին Խլաթ (ԹՈՐ. Բ. 306), և 1446'ին Բաղէշ (ՓԻՐ. 151) գրուածներ ալ, որոնք Վասպուրականէ դուրս են։ Բայց աւելի նշանակալից են այն յիշատակարանները ուր Գրիգոր ու Կիրակոս զոյգ կը յիշուին, զոր օրինակ 1444'ին Արզնի գրուածը (ՓԻՐ. 133), որուն նմաններ սէպ կը հանդիպին (ԱՐԱ. 230), բայց առանձին յիշուելու արժանի է Մեռելյարոց կոչուած աւետարանը, Արճէշ գրուած և Մեծոփ ծաղկած 1445'ին, է հայրապետութեան տեառն Կիրակոսի սուրբ կաթողիկէ Էջմիածնի, և է հայրապետութեան տեառն Գրիգորի աթոռակցի Լուսաւորչին մերոյ, երբ հոն էր և առաջնորդութիւն կը վարէր, պատուածաբնակ սուրբ ուխտին Մեծոփայ սուրբ Աստուածածնայ վանուցն՝ Թովմայ մեծ րաբունապետ (ՓԻՐ. 147), որ է նոյն ինքն Մեծոփեցի պատմիչը և ցաւով Էջմիածինէ հեռացողը։ Չենք կրնար ենթադրել որ Մեծոփեցին ներէր Գրիգորի անունը իր վանքին մէջ Կիրակոսի հետ զոյգ յիշատակել, եթէ Կիրակոս հալածեալ մը և Գրիգոր հալածիչ մը հանդիսանար անոր աչքին։ Հետեւաբար կրնանք վստահօրէն ըսել, թէ Գրիգոր Կիրակոսի պատուաւոր դիրք մը կազմած էր, կաթողիկոսական ձեւ և պատիւ ալ չզլանալով, թէպէտ Վանաստանի նախկին ճգնաւորը, Էջմիածնի շուրջը գտնուող վանքերէն միոյն մէջ նորէն իր ճգնողական կեանքը կ'անցընէր, անցած դարձածէն անտեղեակ, և ըլլալիքին անտարբեր, աղօթքէ միայն սպասելով եկեղեցւոյն և ազգին բարիքը։ Երկու կաթողիկոսներու անուններուն զոյգ յիշատակուիլը, եթէ առաջին անգամ Ջալալբէգեանի կողմէն փափկանկատ զգացումի արդիւնք եղաւ, սակայն ապագային գեղծումներու դուռ և աթոռակից կաթողիկոսներու շրջան մը կազմեց։ Կիրակոսի կեանքը աթոռէ քաշուելէն ետքը վեց տարի եւս տեւած է, և մահը տեղի ունեցած է 1448'ին, մերձաւորաբար ութսնամեայ եղած ատեն, թէպէտստոյգ պատմութիւնը չունինք։ Առաքինի և արբակեաց անձ մը եղած էր միշտ, այնպէս ալ վախճանեցաւ, բարձր աստիճանին հասաւ, գրեթէ դիպուածով, և միայն իր անունը ծառայեց աթոռին փոխադրութեան գործը նուիրագործելու։ Անտեղի չէր ըլլար եթէ Հայոց եկեղեցին ալ պատուէր Կիրակոսը, ինչպէս Հռոմայ եկեղեցին իրր սուրբ կը պատուէ անապատէ եկած և չուտով անապատ դարձած Կեղեստինոս պապը։

**1473.** Գրիգորի կաթողիկոսութեան գործերը պատմելու չանցած, յարմար կը սեպենք Թովմաս Մեծոփեցիի մասին ըսելիքն ալ վերջացնել։ Եռանդուն և տոկուն գործունէութեան վրայ տեսանք միշտ Մեծոփեցին, անդստին այն օրէն որ 12 ընկերակիցներու խումբ մը կազմելով, և Հայ եկեղեցականութեան մասերը բաժնող պատուարները քանդելով, Վասպուրականէ անցաւ Սիւնիք (§ 1396), և իրեն գրաւեց եռամեծ Տաթեւացին ու զայն Վասպուրական բերաւ (§ 1399)։ Պատահական գործ մը չէր Մեծոփեցիին բրածը, և պէտք է ընդունիլ թէ հեռաւոր և բարձր նպատակներ ծնած էին անոր մտքին մէջ։ Բաւական ըլլայ նորէն միտք բերել անոր գործունէութեան արդիւնքները, զորս պատմութեանս կարգին հետզհետէ յիշեցինք, մինչեւ որ նորա մեծ գաղափարը իրագործեցաւ, և 1441'ին Հայ եկեղեցւոյ միահեծան հայրապետը հաստատուեցաւ Էջմիածնի մէջ։ Մեծոփեցին գոհունակութիւնն ալ ունեցաւ իր յարմար տեսած անձը նստեցնել կաթողիկոսական աթոռին վրայ, բայց երբ իր յաջողութեան գագաթնակէտը հասաւ, այնտեղէն սկսաւ իր աստղը խաւարիլ, և գործը ձախողութեան դիմեց։ Վասպուրականցիք իրենց յաջողութեամբ սկսան դեղծանիլ, Էջմիածնի մէջ իրենց բացարձակ գործունէութիւնը հաստատելով և Սիւնեցոց նախանձը գրգռելով։ Մեծոփեցին ալ կ'ընդունի այդ մեղադրանքը, երբ կը խոստովանի, թէ անգիտութեան մեծ արարին կաթողիկոսն Կիրակոս և Զքրակոսացն նորէն (ԿՈՍ. 75), բայց պէտք չէ մոռնանք թէ Կիրակոսի գլխաւոր վերակացուն ինքն էր, և չկրնար ինքզինքը պատասխանատուութենէ զերծ կարծել։ Թերեւս այս խիղճն է որ իրեն կը թելադրէ տեղի տալ, որպէս զի մաքառում ու մրցակցութիւն չյուզել, այլ լուռ ու մունջ քաշուիլ իր վանքը, և գործը թողուլ իր ընթացքին, գրեթէ անգործ կեանք

ԹՈՎՄԱՍ ՄԵԾՈՓԵՑԻ

*մը անցընելով մինչեւ իւր մահը։ Պատմութեանը մէջ կ'ըսէ թէ յետ չխօսն ամօթ-ալոյ (ՄԵԾ. 44), որով փոխադրութեան ձեռնարկէն առաջ գայն գրած կ'ըլլայ, իսկ փոխադրութեան յիշատակարանները Մեծոփ դառնալէն ետքը գրած է։ Երկրորդ հատուածին վերջը 1443 թուական է նշանակուած (ԿՈՍ. 74), և գրուածին գոհունակ ոճը կը ցուցնէ թէ առաջին երկու մասերը գրած է Էջմիածնի մէջ, նոյն տարւոյն ըսկիզբները, տակաւին Կիրակոսի դէմ չարժումը չսկսած, իսկ երրորդ հատուածին մէջ, կը գրէ, թէ փոթորիկին լրանալէն այս եղեւ ամ ե (ԿՈՍ. 86), որով 1446'ին գիրի առած կ'ըլլայ այդ վերջին հատուածը, որ բովանդակ այրած սիրտի մը գեղուածն է, և զսպուած կիրքի մը պոռթկացումը։ Սուրբ Գիրքին մէջ յիշուած բոլոր տիրադրուժներու և քահանայապետ անարգողներու օրինակները կը կուտէ Կիրակոսի դէմ ելնողներուն գլուխը, յատկապէս կը զայրանայ Հերմոնեցիին դէմ, ոչինչ+ խլոցեալ, ողէրոյ մտրուսօ՝ չէ դեղն ե փոխարկեալ, և մաքեալ ֆերեզմանէ ծնրին դէմ (ԿՈՍ. 84)։ Կը զարմանայ թէ տակաւին մեղայ ոչ ենն ի բերանս նոցա (ԿՈՍ. 86), բայց կը մաղթէ Աստուծմէ մ' տանել նոցա պատարագ յանձինն պատարագանն, այլ սատ տանել նոցա ընդոտնեն (ԿՈՍ. 87)։ Սակայն և այնպէս սպասած մխիթարութիւնը չունեցաւ, և ցաւով կնքեց իւր կեանքը Կիրակոսէ քիչ առաջ։ Յիշատակարան մը 1446'ին կը դնէ նորա մահը, վախճան ամ կոչեալ անդ ի Մեծոփ (Փ՚Ր. 148), սակայն նորէն Ե և Է թուատառերու շփոթութիւն պէտք է ընդունիլ, վասն զի 1448'ին Յակոբ Ղրիմեցի վարդապետը կը յղէ անոր ազգահամարի և տոմարի բացատրութիւնները (ՓԻՐ. 158)։ Ըստ այսմ 1448 տարին ընդունուած է իբր Մեծոփեցիին մահուան թուական, իսկ տարիքը եօթանասունը անցած պէտք է հաշուել։*

**1474.** *Փոխադրութեան ձեռնարկը չարայարեալ տալու համար, երկրին քաղաքական կացութիւնը բացատրել յետաձգեցինք։ Եաղուպ պէկ, Երեւանի կառավարիչը, կամ լաւ եւս ինքնուրոյն իշխանը, ենթարկեալ էր*

ԱՐԵՒԵԼԱԿՈՂՄԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ

*Ճիհանշահի կամ Ջահանշահի, Գարաքոյունլուներու վեհապետին, որ խոյեցան անունը կը կրէր, կեդրոնը հաստատած էր Թավրէզ, և իրեն կը հպատակէին Ատրպատական, Պարսկահայք, Վասպուրական, Այրարատ, Սիւնիք, Աղուանք և Վրաստան (§ 1430)։ Նա 1437'ին յաջորդած էր իր եղբօր Իսքէնտէրի (§ 1428), և անհարկու եղած չրջականերուն, որով համեմատաբար հանդարտութիւն կը տիրէր։ Իսկ Աքքոյունլուներուն վեհապետը կամ սուլտանը Օթման 1435'ին սպանուելէն ետքը (§ 1428), իրեն յաջորդած էր որդին Համզա, միշտ կեդրոնը ունենալով Միջագետքի մէջ՝ Ամիդ կամ Տիարպէքիր քաղաքը, և իշխանութիւնը տարածելով Հայաստանի Ծոփք և Աղձնիք և Տուրուբերան նահանգներուն վրայ։ Համզայի իշխանութիւնը խիստ եղաւ քրիստոնէից դէմ, մինչեւ իսկ Մկրտիչ Նաղաշ եպիսկոպոսին Օթմանի արտօնութեամբ շինել տուած Ս. Թէոդորոսի կաթողիկէին (§ 1427) գմբեթը հրամայեց վար առնել, մինարէներէն աւելի բարձր ըլլալուն համար, և Նաղաշ ցաւին չդիմանալով պահ մը Ամիդէ հեռացաւ, և Տրապիզոն ու Կոստանդնուպոլիս հանդիպելով անցաւ Կաֆա, և հոն մնաց մինչեւ որ Ճիհանկիր սուլտան հօրը յաջորդելով 1443'ին, Նաղաշը փնտռեց, դարձուց 1447'ին, և արտօնեց գմբեթը վերաշինել, զոր տասն օրուան մէջ լրացուցին Ամդեցիք, բոլոր հայրենակութիւն տիւ ու գիշեր աշխատելով։ Այս առթիւ նոյն եկեղեցւոյն մէջ զետեղուեցաւ Ս. Նշանը կամ Խաչափայտի մասունքը, զոր Սարգիս Կաֆայի եպիսկոպոս Եւգինէոս պապէն նուէր առած էր (§ 1440), և ինքն ալ Նաղաշին ընծայեց։ Նաւակատիքը կատարուեցաւ Վարագայ Խաչին տօնին, 1447 հոկտեմբեր 1'ին, որ տարեկան հանդիսութիւն եղաւ Ամդեցիներուն (ՀԱՑ. 574)։ Գարաքոյունլուներու և Աքքոյունլուներու փոխադարձ թշնամութիւնները բոլորովին չդադրեցան, թէպէտեւ հայկական գաւառներու վրայ շատ չծանրացան, և տեւեցին մինչեւ որ Ճիհանշահ զօրացաւ և իրեն հարկատու ըրաւ Ճիհանկիրը 1461'ին։ Ճիհանշահ դէպ Արեւելք ալ իւր իշխանութիւնը ընդարձակած էր, և հետզհետէ նոր մասերու տիրե-*

լով ամբողջ Պարսկաստանը նուաճած էր 1460'ին, հանելով զայն Պուսայիտի կամ Ապուսայիտի ձեռքէն, որ 1451'ին յաջորդած էր Շահռուհ մեծ ինքնակալին Թաթարաց: Ծիհանշահի իշխանութիւնը ընդհանուր առմամբ նպաստաւոր էր քրիստոնէից, և անկէ օգտուելով տեղի ունեցան այն ներքին շփոթութիւնները, որոնց սկզբնաւորութիւնը տեսանք Կիրակոսի գահընկէցութեամբը: Կարծես թէ արտաքին շփոթութեանց նուազիլը ներքինները կը քաջալերէր:

**ԱՐԵՒՄՏԱԿՈՂՄԱՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ**

**1475.** Արևմտեան Ասիոյ երկիրներուն մէջ ալ երեք տարբեր տէրութիւններ կ'իշխէին, Եգիպտացիք և Գարամանցիք և Օսմանեանք: Պաղեստին և Ասորիք և Կիլիկիա Եգիպտացւոց ձեռքն էին, և Սիսն ալ անոնց գերիշխանութեան ներքև էր: Գարամանցիք Փոքր-Հայքը ունէին, տարածուելով դէպի Բարձրհայք և Պոնտոս, իսկ Փոքր-Ասիան և կղզիներ, և Եւրոպական կողմեր Օսմանեանց ձեռքն էին, որոնց կ'իշխէին յաջորդաբար երկու զօրաւոր վեհապետներ, Մուրատ Բ և անկէ ետքը Մէհէմմէտ Բ որ հօրը գահը ժառանգած էր 1451'ին: Յունական կայսրութիւնը Կոստանդնուպոլսոյ անձուկ շրջափակին մէջ պարփակուած, վերջին ճգնաժամի օրեր կ'անցնէր: Յովհաննէս Է Պալէոլոգի, Փլորենտիոյ ժողովով ու Հռոմի հետ միաբանութեամբ ձեռք ձգել յուսացած օգնութիւնը՝ պարապի ելած էր, բայց Յոյներ անկէ դաս առած մը չունենալով, երբ մէկ կողմէն Կոստանդնուպոլսոյ պարիսպները ամրացնելու կ'աշխատէին, միւս կողմէն ալ պապական պատուիրակներուն հետ Հոգւոյն Սրբոյ բղխման խնդիրներով կը զբաղէին, որ հնար ըլլայ Հռոմը հաճեցնելով Լատինական գունդերը օգնութեան բերել: Յովհաննէս Է'ի շաւղին վրայ կը քալէր Կոստանդին ԺԳ Պալէոլոգն ալ, որ եղբօրը յաջորդած էր 1448'ին: Մեհէմմէտ Բ հազիւ գահ բարձրացած, ուզեց վերջին հարուածը տալ հոգեվար կայսրութեան, և 1453 մայիս 29'ին Կոստանդնուպոլիսը գրաւեց, և Ֆաթիհ կամ Յաղթական հռչակուեցաւ, Սուրբ Սոփիայի կաթողիկէին մէջ իսլամական աղօթքը հնչեց, աւերած ու կոտորած պահ մը տիրապետեցին, կայսրն ու պատրիարքը պատնէշներու վրայ ինկան, և Օսմանեանց թագաւորութիւնը կայսրութեան բարձրացաւ: Արդէն խօսեցանք համակիր յարաբերութեանց վրայ, զորս Թուրքեր և Հայեր փոխադարձաբար ունէին և կը մշակէին (§ 1386): Մուրատ Բ աւելի ընդարձակած էր իր տէրութիւնը, դէպի Փոքր-Հայք. Գարամանցիները հետզհետէ հարուածած էր, Եգիպտացիներէն ալ քաղաքներ գրաւած էր, որով աւելի շատցեր էին Օսմանեանց հպատակ Հայերը: Յունական կայսրութեան անկման հետևանքներէն մին եղաւ Կոստանդնուպոլիսը մայրաքաղաք հռչակելը, և ուզեց անոր մէջ Հայական հոծ գաղթականութիւն մը հաստատել, իբր հակակշիռ Յունական բնակչութեան, քրիստոնեաներու դիմաց քրիստոնեաներ դնելով, քանի որ իր բարձր քաղաքականութիւնը պիտի չներէր իրեն մայրաքաղաքին մէջէն քրիստոնեայ տարրը ջնջելով հաստատուիլ: Անկէ սկիզբն առած է Բիւզանդական ոստանին մէջ Հայկական մեծ գաղութին ներկայութիւնը, և պատրիարքական աթոռով և իշխանութեամբ ճոխանալը, զոր իր կարգին պիտի լուսաբանենք:

**ԱՂԹԱՄԱՐԻ ԽԶՈՒՄԸ**

**1476.** Աղթամարի Զաքարիա կաթողիկոսը, որ Վասպուրականցիներուն վստահանալով և Էջմիածին փոխադրուելու յոյսով համակերպած էր Վաղարշապատի ժողովին գումարման և Էջմիածնի աթոռին վերանորոգման, յուսախաբ եղաւ երբոր Կիրակոս ընտրուեցաւ, բայց տուած խոստումէն ետ չկեցաւ, վասնզի ընտրեալը Աղթամարի հին թեմական մըն էր, որ Աղթամարի աթոռը կ'արձակէր ու կ'օրհնէր, և իր գլխաւոր ակընկալութիւնն ալ դեռ կրնար իրականանալ: Էջմիածինի և Աղթամարի յարաբերութիւնները հաշտ ընթացան Կիրակոսի երկամեայ կաթողիկոսութեան միջոցին, բայց նոյնպէս չէին կրնար մնալ երբ Կիրակոս հեռացաւ, Վասպուրականցիներ ցրուեցան և Սիւնեցիք տիրեցին: Զաքարիա խզեց իր յարաբերութիւնները, Գրիգորի հետ չպահեց նոյն ընթացքը զոր Կիրակոսի հետ հաստատած էր,

*և չուզելով Գրիգորի կաթողիկոսութիւնը ճանչնալ, և իրաւունքի տեսակէտէն Կիրակոսը կաթողիկոս ընդունելով, զինքն ալ անոր աթոռակից և Ամենայն Հայոց հայրապետութեան վարիչ կը նկատէր։ Վանի մէջ 1446'ին գրուած յիշատակարան մը այդ տեսութիւնը կը հաստատէ, ի կաթողիկոսութեան տեառն Կիրակոսի և տէր Զաքարիայի բացառութեամբ* (ՓԻՐ. 154)։ *Բայց երբ Կիրակոս մեռաւ զինքն յաջորդ և ժառանգ նկատեց, և* 1448'*ին յիշէ Զաքարէն իբրև կաթողիկոս Էջմիածնի* (ԱՐԱ. 230), *և այսպէս կը շարունակէ սպառնալով իրօք ալ Էջմիածին փոխադրուիլ, և Ամենայն Հայոց աթոռին վրայ բազմիլ Մայր տաճարին մէջ, ինչ որ բաւական ուշ կրցաւ յաջողցնել։ Անլորդ կը սեպենք փնտռել թէ ինչ դեր ունեցաւ Մեծոփեցին այդ ճիգերուն մասին, և թէ քաջալերեց արդեօ՞ք Զաքարիայի գաղտնի հնարքները, որովհետեւ Կիրակոսի մահուանէն առաջ իրական ձեռնարկ կամ յայտարարութիւն մը տեղի չէր ունեցած, իսկ մահուանէն ետքն ալ Մեծոփեցին այլեւս կենդանի չէր։ Իր վերջին յիշատակարանին մէջ ալ Աղթամարի մասին յայտնի ակնարկ մը չունի։*

**1477.** *Աղթամարի խզումէն աւելի կարեւորութիւն ունեցաւ Կիլիկիոյ բաժնուիլը։*

**ԿԻԼԻԿԻՈՅ ԱԹՈՌԸ**

*Փոխադրութեան թուականէն, այսինքն* 1441'*էն ետքը Կիլիկիոյ ստացած կացութեան վրայ արդէն փոքրիշատէ խօսեցանք* (§ 1462), *և Մուսաբէգեանցի կենդանի կամ մեռած ըլլալուն մասին, ինչ ալ ըլլայ ճշմարիտը կամ ճշմարտանման կարծիքը* (§ 1463), *ստոյգ է թէ Կիլիկիոյ աթոռը միջոց մը խափանեցաւ և դադարեցաւ, և յաջորդութիւնը ընդհատեցաւ Սսոյ մէջ։ Անչէն յիշատակարաններ, կը վկայեն թէ աթոռն որ էր ի Սիս խափանեցաւ, կամ աթոռն Սսոյ [illegible] Հայոց* (ՓԻՐ. 126), *այնպէս որ Մուսաբէգեանցի հրաժարած կամ գահընկէց եղած, մեռած կամ Գահիրէ փախած ըլլալէն, իրաւական և իրական կացութիւնը չփոփոխուիր։ Մէկը կ'ըսէ թէ, որոյ աթոռն Լուսաւորչին ի մայրաքաղաքն Կիլիկիոյ, տանն հինգ ամ խափանեալ Հայոց վասն անյայտ լինելոյ տեառն Աջին* (ՀԱՑ. 575)։ *Արդէն ցուցուցինք թէ պարզ սխալանք մըն է 25 տարի ընթերցուածը, ինչպէս ուրիշ տեղ ալ գրուած է. Զոր հինգ ամ խափանեալ Հայոց վասն անյայտ լինելոյ տեառն Աջին* (ՍԻՍ. 223)։ *Մեծոփեցին կը գրէ, թէ [illegible], ի Կիլիկեցւոցն ի [illegible], Աստուած ողորմեսցէ, և անկէց ետքն է, որ դարձեալ վերստին [illegible] կաթողիկոս եդին* (ԿՈՍ. 85), *որ է ըսել թէ Սսոյ աթոռին դադարելուն և վերսկսելուն մէջ, ընդհատման միջոց մը անցած է։ Անգամ մը որ Կիլիկիոյ աթոռը խափանեալ էր, հաւանական չէր անոր վերսկսիլը եթէ Էջմիածնի մէջ շփոթութիւններ ծագած չըլլային, Կիրակոսի գահընկէցութիւնը տեղի չունենար, Գրիգորը կաթողիկոս չհաչակուէր, Զաքարիա իր յաւակնութիւնները չյուզէր, և Կիրակոսի ու Գրիգորի ու Զաքարիայի միանգամայն կաթողիկոսութիւնը ճանչցողներ չգտնուէին։ Այդ պատճառաւ է որ Կիլիկեցիներն ալ քաջալերուեցան երեք կաթողիկոսներն ալ չճանչնալ, և չորրորդ մըն ալ իրենք հաչակել։ Այդպէս կը խորհի Մեծոփեցին ալ, որ Հերմոնեցին յանդիմանելով կ'ըսէ, Կիլիկեցին [illegible] անփութութեան և անհամութեան [illegible] լսեցին, և այս պատճառաւ [illegible] կաթողիկոս եդին* (ԿՈՍ. 85)։ *Ովքեր և քանիներ էին այդ շարժումին գլուխը՝ չենք գիտեր, միայն կաթողիկոս հաչակուողին անունը գիտենք, որ էր Կարապետ Ս[illegible]։ Մեծոփեցիէն երէց մի աշխարհիկ կոչուած, հարկաւ առաջ ամուսնաւոր քահանայ եղած ըլլալուն համար։ Եպիսկոպոսութեան համար ձեռնադրեալ է Կիրակոսէ ըսուած է* (ՉԱՄ. Գ. 491), *և Մեծոփեցիին երէց մի աշխարհիկ, որ է նոցանէ էր ձեռնադրեալ ըսելը* (ԿՈՍ. 85), *առ առաւելն ամուսնաւոր քահանայութենէ մեղաւոր վարդապետութեան վրայ պիտի իմացուի, եթէ պարզապէս քահանայութեան վրայ առնել չուզենք։ Կիլիկեցի յիշատակագիրը, որ այնչափ հիացմամբ կը խօսի Կարապետի վրայ, Սսոյ մէջ աթոռ վերանորոգելուն համար, այդ մասին բնաւ տեղեկութիւն չտար. միայն եկեալ է Թոխաթոյ կ'ըսէ, ուսկից Եւդոկիացի մակդիր անունը, որ աւելի եպիսկոպոսական վիճակէն առնուած կը թուի, քան թէ ծննդավայրէն։ Կարապետի տրուած գովեստները,*

հարկաւ Կիլիկեցիի մը չսայլութիւններ են (ՀԱՑ·575), սակայն ամէն առթի մէջ ճարպիկ և գործունեայ և մտաւոր կարողութեան ալ տէր անձ մը եղած կը տեսնուի։

**1478**. Ամենայն Հայոց կաթողիկոսութեան համար Լուսաւորչի Աջին ունեցած նշանակութիւնը յայտնի ըլլալով (§ 1456), Կարապետի հնար չէր Սիսի մէջ կաթողիկոսութիւնը հաստատել առանց Աջն ալ վերահաստատելու,

**ԱՋԵՐՈՒ ԽՆԴԻՐԸ**

հետեւաբար պէտք էր որ գտած ըլլար անյայտացեալ Աջը, որուն բացակայութիւնը Կիլիկեցիներն ալ համոզած էր Սսոյ աթուին գաղարելուն։ Իրօք ալ այդ եղաւ Կարապետի ձեռնարկին փառքը, և յետոյ գտեալ, այսինքն անյայտ եղած Աջը՝ Նորոգեաց զաւուրբ օծման (ՀԱՑ·575)։ Սակայն արդէն աշխարհաքարոզ եղած էր, թէ Աջը կանուխէն յայտնուած էր Վաղարշապատի մէջ, և այս եղած էր Կիրակոսի կաթողիկոսութեան հիմը, և մինչեւ ալ այն Էջմիածին կը մնար, զի 1445'ին Գրիգոր Ջալալբէգեան օրհնութիւն կը գրէր ի սուրբ յԱջէն Գրիգորի Տեառն Լուսաւորչէ (ՓԻՐ·140) և այնպէս ալ կը շարունակէր։ Իսկ Կարապետի աջը գտնալը և անով ինքզինքը կաթողիկոս հռչակելը 1446'էն առաջ եղած չէ, և պատմական հանգամանքներ բաւական են հաստատել, թէ Սսոյ նոր աջը, բուն և վաւերական աջը չէր, որչափ ալ Կիլիկիոյ կաթողիկոսներ ջանան պնդել և անոր ստուգութիւնը ապացուցանելու աշխատիլ։ Աջի մը մէջտեղ ելնելը բաւական չէ այդ նպատակին, զի Աջի ձեւով մասնատուփը հայկական յատուկ սովորութիւն է. որով ամէն մի սուրբի նշխարքը, որ ոսկրն և ըլլայ, և որչափ պզտիկ ալ ըլլայ, աջ ձեռքի ձեւով արծաթէ տուփի մը մէջը կամ ծայրը կը զետեղուի, և կ'ըլլայ սուրբի մը աջը։ Աջի ձեւին կիրառութիւնը յարմար տեսնուած է անով օրհնութիւն տալու կամ խաչալուայ ընելու, և այժմ ալ Հայ եկեղեցիներու մէջ կը տեսնուին սուրբերու աջեր և նոյն սուրբի բազմաթիւ աջեր, որոնք միայն աջի ձեւով մասնատուփեր են, նոյնիսկ մասներն ալ օրհնութիւն տալու ձեւով ծալլուած։ Ջալալբէգեանի վերոյիշեալ կոնդակին մէջ Լուսաւորչէն զատ տասը հատ ևս աջերէ օրհնութիւն կը յիշուի, աւելցնելով և այլ բազում աջերոյս որ աստ կան (ՓԻՐ·140)։ Կիլիկիոյ աջերն ալ մէկէ աւելի են, և չորից սրբոց աջերոց անունները կը տրուին, որք են սրբոյն Գրիգորի Լուսաւորչին, և Սեղբեստրոսի Հռոմայ հայրապետին, և սրբոյն Նիկողայոսի սքանչելագործ հայրապետին, և սրբոյն Բարսամայ ճգնաւորին (ԱՋԱ·58)։ Միւս կողմէն ոչ Էջմիածնի և ոչ Սիսի աջերը բացուած չեն, և մէջը ինչչափ ոսկր գտնուիլը քննուած չէ, և չենք ալ կրնար պնդել, թէ առաջին անգամ Աջի մասնատուփը չինել տուողը (ԱՋԸ·30) աջ ձեռքի ամբողջ ոսկրները անոր մէջ զետեղած ըլլայ։ Ըստ այսմ Կարապետ Եւդոկիացիին գիւտին էր, նորէն բուն աջին նման նոր աջ մըն ալ պատրաստել տալ, մէջն ալ Լուսաւորչի մասունք զետեղել, եթէ չուզենք ալ ուրիշ որեւէ ոսկր մը զետեղած ըսել։ Որովհետեւ յետոյ գտեալ բացատրութիւնը, ոչ գիւտին պատմութիւնը կը ցուցնէ, և ոչ յայտնութեան պարագաները, և պարագային համեմատ գրուցուած խօսքէ մը աւելի չէ։

**1479**. Փափաքելի էր գիտնալ թէ երբ և ինչպէս պատրաստուեցաւ Կարապետի կաթողիկոսութիւնը, ո՞ր աւագէ և քանի եպիսկոպոսներով կատարուեցաւ

**ԿԱՐԱՊԵՏ ԵՒԴՈԿԻԱՑԻ**

անոր օծումը, և ինչ պարագաներ ընկերացան այդ եղելութեան։ Թուական պէտք է նշանակել 1446 տարին, ինչպէս յայտնապէս կը քաղուի քանիցս յիշուած Կիլիկեցւոյն յիշատակարանէն, որ թէպէտ առանց թուականի հրատարակուած է Ալիշանէն (ՀԱՑ·575), սակայն Անտոնեանց մատենադարանի պահուած բնագիրը ՊՂԵ, այսինքն 1446 թուականը կը պարունակէ (ՑՃՏ.), և է նոյն այն ձաչոցը որ ծաղկելէն և կազմուելէն ետքը նուիրուած է Կարապետ Եւդոկիացիին։ Նոյն յիշատակարանն է որ կը վկայէ թէ Կիլիկիոյ աթոռը հինգ աջ խաչանեալ [illegible] սուրբ Աջին Տեառն Լուսաւորչին (ՑՃՏ.)։ Կարապետ անմիջապէս փութաց իւր գիրքը ամբացնելու համար Եգիպտոս երթալ սուլտանին մօտ, որ Տահիր կոչուած է (ՑՃՏ.), սակայն Ալուսայիս Չաքմաք արդէն գահակալած էր

(ՃՆՏ.71)։ *Կարապետ կ'ուզէր հաստատութեան հրովարտակ և պարգևներ ստանալ, իբր կաթողիկոս Եգիպտացւոց սուլտանութեան հպատակ Հայերուն։ Երթալուն և դառնալուն Երուսաղէմ հանդիպած է, ուր 1445'էն պատրիարք էր Աբրահամ, Եսայիի* (§ 1435) *և Յովհաննէսի յաջորդած* (ԲԱՌ. 49)։ *Կարապետ անոր ալ օգնեց, և ողորմելոց եկեղեցին է դարպասոյ և զօրացութիւնն է յանօրինաց՝ դեռ Եգիպտոս չգացած, իսկ ի դարձին ստացած նուէրներուն մի մասը Երուսաղէմի յատկացնելով, ուզած է անշուշտ Միաբանութիւնը շահիլ և Երուսաղէմն ալ իւր կաթողիկոսութեան ներքև պահել։ Կարապետը 1447'ին ալ յիշատակուած կը գտնենք իբր կաթողիկոս* (ՓԻՐ. 157), *հարկաւ պաշտօնապէս ճանչցուելէն ետքը, և այս թուականով ալ ցուցակի անցած է* (ՍԻՍ. 218)։ *Տարիէ մը 1448'ին, Պօղոս Գառնեցիին շինած Ս. Աննայի հայրապետանոցը* (§ 1414) *նորոգած՝ և անոր մէջ հաստատուած է* (ՍԻՍ. 223)։ *Դժուարին է ճշդել թէ որ երկիրներ և քանի վիճակներ ընդունեցան անմիջապէս Կարապետի կաթողիկոսութիւնը և Սսոյ աթոռին իրաւասութեան ներքև մտան։ Ոչ մի ճշգրտապատում յիշատակ մեզի հասած չէ այս մասին, և խնդիրին լուծումը կը մնայ հաւանական մերձեցումներու։ Քանի որ Գրիգոր Էջմիածնի մէջ կը նստէր Ճիհանշահի հովանաւորութեամբ, և Կարապետ Սիսի մէջ հաստատուեցաւ Ջաքմաքի պաշտպանութեամբ, բնական էր, որ անոնց պետական սահմաններն ալ կաթողիկոսներուն իրաւասութեան գիծերը ըլլային, անոնց սահմաններէն անդին եղողներն ալ սահմանակիցներուն կապուելով, առանց որոշ և հաստատուն սահմանագիծ մը ունենալու, որով սահմանի վրայ եղող քաղաքներ չարունակ մէկէն միւսին կ'անցնէին։ Այդ խորհրդածութիւններէն կը հետևցնենք թէ Կիլիկիայէն դէպ արևմուտք, Գարամանցիներուն և Օսմանցիներուն հպատակ Հայերը բնական կերպով մը Սիսին կապուեցան, մանաւանդ որ մինչև քանի մը տարի առաջ Սիսը հայրապետանոց ճանչնալու վարժուած էին, և Էջմիածին իրենցմէ հեռու էր և յարաբերութիւնները դժուար։ Այդ մեր կարծիքին հաստատութիւն կու տայ Եւդոկիացի Կարապետէն շուրջ 150 տարի ետքը կազմուած ցուցակ մը, ուր իբր Սսոյ աթոռին ենթարկեալ վիճակներ կը նշանակուին Կիլիկիայէ զատ, Երուսաղէմ, Հալէպ, Կիպրոս, Նէոկեսարիա, Անկիւրիա, Կոստանդնուպոլիս և Թեսաղոնիկէ* (ՊէՆ. Ա. 823)։ *Ինչ որ կը ցուցնէ թէ Եգիպտոսի սուլտանութենէն դուրս, Գարամանցիներու և Օսմանցիներու ներքև եղող Հայերն ալ սկիզբէն Սիսի աթոռին յարած էին։*

**ԲԱԺԱՆՄԱՆՑ ՀԱՆԴԷՊ**

**1480**. *Գրիգոր Ջալալբէգեան, աղմուկով և խռովութեամբ աթոռ բարձրացած, հանդարտ պաշտօնավարութեան կերպարան տըւաւ իւր կաթողիկոսութեան, առանց մաքառումներու կամ ընդդիմութեանց ձեռնարկելու։ Կիրակոսի պատուաւոր դիրք մըապահովեց* (§ 1472), *Զաքարիայի յարաբերութիւնները խզելուն հանդէպ լռեց* (§ 1476), *և ոչ ալ Կարապետի նոր աթոռ մը հաստատելուն դէմ բողոքեց, այնպէս որ թէպէտ հակաթոռներ ելան մէջտեղ, սակայն Մայր Աթոռը անոնց դէմ վճիռներ չարձակեց, կապանքներ չվճռեց, նզովք ու բանադրանք չհռչակեց։ Երբոր առաջին անգամ Աղթամար հակաթոռ կաթողիկոսութիւն հաստատեց, Սեաւ-Լերան ժողովը նզովք ու կապանք վճռեց Գրիգոր Պահլաւունիի օրով* (§ 929), *իսկ Գրիգոր Ջալալբէգեանի օրով ոչ ժողով գումարուած է, և ոչ վճիռ արձակուած, որով կրնանք ըսել թէ Աղթամարի աթոռը Կիրակոսի օրհնութենէն ետքը կրկին չէ նզովուած, իսկ Կիլիկիոյ աթոռին դէմ առաջին օրէն նզովք չէ արձակուած, վասնզի նզովք ու բանադրանք՝ զօրութեամբ կամ լռութեամբ չեն տրուիր, և ոչ ալ մեր մէջ* Նոյն գործով (ipso facto) *բանադրանքի ոճը կանոնուած է։ Այդ ընթացքը եթէ մասամբ Ջալալբէգեանի դիրքին տկարութեան հետևանքն էր, որ պէտք ունէր հանդարտութեամբ իւր չփոթ կացութիւնը ամրապնդել, միւս կողմէն պէտք է իւր ընթացքին խոհականութիւնն ալ դիտել, քանի որ խռովութեամբ յառաջ եկողէ մը շատ դիւրաւ կրնար յառաջ բերել, սակայն ընթացք մըն ալ սպասուիլ, դէմը*

*կանգնողները և մրցումի ելլողները հալածելով և հարուածելով։ Գրիգոր ընդհակառակն չինարար և բարեկարգական գործերու մտադրութիւն դարձուցած է, որչափ որ չէր սպասուեր* Թորգոմ ու զԹորգոմ *պաշտօնի հասնողէ մը* (ՍԱՄ. 173)։ *Դավրիժեցին կը վկայէ թէ* Նորոգեաց տաճարն է Սուրբ Էջմիածնի (ԴԱՎ. 336), *և Երեւանեցին, որ հին յիշատակներու խղճամիտ պրպտող մը եղած է, չվարանիր յայտարարել, թէ* Գրիգոր կաթողիկոսս այս Մակուեցի անուն ղզանտուն է սուրբ աթոռոյս, քանզի նախաղես ոչ նորոգեաց զինուած որքոյ աթոռոյս է Ներքսասար Լուսաւորչի, զմեծափառ եկեղեցւոյս տանելով հոգաբարձուն պէտքանական և պատուերական եռալ փառաքնեալ, որք ասա կան արդէն (ՋԱՄ. 19)։ *Ասոնք մին միւսէն օգտակար ձեռնարկներ են. Էջմիածնի խաթարեալ վանքը նորոգել, և անոր կալուածները օրինական կալուածագիրերով ապահովել, որոնք հիմ եղած են Մայր Աթոռին հետզհետէ կազդուրման և զարգացման։*

**ԱՐԻՍՏԱԿԷՍ ԱԹՈՌԱԿԻՑ**

1481. *Գրիգորի ուրիշ մէկ կարգադրութիւնն ալ՝ յատուկ մտադրութեան արժանի է։ Դավրիժեցին 1455 թուականի ներքեւ կը դնէ.* Նոյն տէր Գրիգոր, այլև Եղէն կաթողիկոս տէր Արիստակէս (ԴԱՎ. 336)։ *Դավրիժեցիին գործածած թուականները, ինչպէս ինքն իսկ յայտարարած է, եղելութեանց սկիզբը չեն ճշդեր, այլ թէ նոյն թուականին ներքեւ ինքն յիշատակութիւն մը գտած է։ Ըստ այսմ երբ Արիստակէսի կաթողիկոսանալուն թուական պարտաւոր չենք ընդունիլ 1455 տարին, այլ թէ այն տարին արդէն եղած էր։ Եղելութեանց կարգը ուսումնասիրելով կը գտնենք որ մինչեւ 1448, Գրիգորի և Կիրակոսի զոյգ կաթողիկոսութիւն մը պահուեցաւ (§ 1492), և ազգը վարժուեցաւ մի և նոյն աթոռի վրայ մէկէ աւելի կաթողիկոսներ տեսնելու։ Կերպով մըն ալ Վասպուրականցիներու զգացումները չահուեցան, իրենց սիրած անձին ցուցուած մտադրութեան գոհունակութեամբ։ Արդ ճիշդ 1448'ին է որ առաջին անգամ* ի հայրապետութեան տեառն Արիստակէսի *յիշատակութեան կը հանդիպինք, և որ աւելին է, Վանայ մէջ գրող Վասպուրականցի մըն է, որ այդ յիշատակութիւնը կ'ընէ* (ՓԻՐ. 158)։ *Այդ պարագան մեզ կ'առաջնորդէ հետեւցնել, թէ Կիրակոսի մահուամբ, Վասպուրականցիներու համակրութիւնը չկորսնցնելու համար, անոր յաջորդ մը ուզած է տալ Գրիգոր, անոնցմէ կամ անոնց համակիր անձ մը իրեն աթոռակից առնելով, որ միւս կողմէն պիտի կարենար իրեն օգնական ըլլալ աթոռին տագնապալի վիճակին մէջ առձեռն գործերը լրացնելու։ Ասոնց մէջ գլխաւորներէն մէկն էր դրամականը, պահանջուած տուրքերը և տուրքերը վճարելու համար, զի եթէ Գրիգոր կրցած էր ծիհանշահ վեհապետին հովանաւորութիւնը վայելել և Եաղուպ կուսակալէն ամէն պաշտպանութիւն գտնել, զօրաւոր ազդակը նախընծայ նուէրներն և տարեկան վճարումներն էին, որոնք հետզհետէ կը ծանրանային միջոցներուն նուազելովը։ Արիստակէսի կաթողիկոսութիւնը այդ դժուարութեանց դարման մը պիտի ըլլար։ Ասկէ աւելի տեղեկութիւն չունինք և չենք կրնար տալ՝ թէ Արիստակէսի անձին և նախընթացին, և թէ իր անուանման չարժառիթին վրայ։*

**ԱԹՈՌԱԿՑԱՑ ԴԻՐՔԸ**

1482. *Ընդհանուր և իրաւասական խնդիր մը կը ներկայացնէ մեզի երկրորդական կաթողիկոսի մը անուանումը, որ յառաջիկային աւելի ընդարձակ կիրառութիւն ստանալ սահմանուած էր։ Կաթողիկոսի մը հրաժարելով ուրիշ մը անուանուելուն օրինակը ունինք Սարգիս Սեւանցիի վրայ* (§ 812), *մէկուն գահընկէցութեամբ ուրիշ մը ընտրուիլը տեսած ենք Վահան Սիւնիի* (§ 770) *և Կոստանդին Կատուկեցիի վրայ* (§ 1182), *պաշտօնավարութիւնը լքանելով գործը ուրիշի յանձնելու կերպն ալ գործադրած էր Գրիգոր Վկայասէրը* (§ 879), *վերջապէս հրաժարեալ կաթողիկոսի մը նմանապէս չարունակելն ալ տեսնուեցաւ Կիրակոս Վիրապեցիի վրայ* (§ 1472), *սակայն բոլորովին նոր էր գործի վրայ եղող և գործը չլքանող կաթողիկոսի մը քով, համահաւասար անունով և գիրքով, օծումով և արտօնութիւններով կաթողիկոս մը եւս պահել։ Շատեր սովորութիւն ըրած են այս երկրորդականներն*

ալ իբրեւ կատարեալ կաթողիկոս արձանագրել և կարգի թուահամարով կաթողիկոսներու դաւազանին անցընել (ԺԱՄ. 635), բայց մենք այդ սովորութեան պէտք չկարենանք հետեւիլ: Մեր ըմբռնումով Ամենայն Հայոց հայրապետութիւնը յատուկ և միակ աթոռ մըն է, և ամէն աթոռ իր միակ աթոռակալը կրնայ ունենալ, և ոչ երկու կամ աւելի: Կրնանք ընդունիլ որ լիազօր փոխանորդներ կամ խորհրդականներ կարենան անուանուիլ, որ նոյնիսկ եպիսկոպոս ձեռնադրելու և միւռոն օրհնելու իշխանութիւնները ուրիշի ալ կարենան փոխանցուիլ, բայց չենք կրնար ընդունիլ, որ ասով իսկական կաթողիկոսութիւնը և միակ աթոռակալութիւնը կարենայ կիսուիլ կամ բաժնուիլ: Հետեւապէս ցորչափ աթոռի տէր կաթողիկոս մը կենդանի է, ուրիշ մը համահաւասար կաթողիկոս չկրնար ընդունուիլ, և մենք ալ անոնց անունները դաւազանին չենք կրնար անցընել, այլ կը նկատենք իբրեւ աթոռակից կամ կաթողիկոսակից՝ լիազօր փոխանորդի կամ գործակից օգնականի կերպարանով, և ոչ աւելի: Ներկայ պատմութեանս մէջ գլուխները կաթողիկոսներու անունին վրայ բացած ըլլալով, աթոռակիցները բուն կաթողիկոսին գլուխին ներքեւ կը պահենք: Այսպիսիներուն պաշտօնական անունը կ'երեւի թէ Աթոռակալ եղած, վասնզի Արիստակէս, որ այդ նոր դիրքին առաջինն է, այդ անունով կոչուեցաւ, և նոյնը իր վրայ իբրեւ մականուն մնաց: Որչափ ալ աթոռակալ անունին իմաստը, բառական ճշդութեամբ աթոռին տէրը կը ցուցնէ, և ոչ անոր օգնականը կամ փոխանորդը, սակայն սովորութիւնը այդ երկրորդ իմաստը յատկացուց Աթոռակալ բառին, և զուգէ Արիստակէսէն սկսաւ այդ սովորութիւնը: Վասն զի նոր դիրք մըն էր ստեղծուածը, և նոր անուն մըն ալ պէտք էր որ զայն բացատրէր, առանց շատ ականջները խայթելու: Աթոռակիցներու սովորութիւնը հետզհետէ տարածուեցաւ մինչեւ միեւնոյն ատեն չորս կամ հինգ կաթողիկոսներ ունենալու չափ, որ կատարեալ գեղծում էր: Բայց եթէ այդ տարօրինակ ձեւէն օգուտ մը կրցանք ունենալ, այն ալ անհակառակ և առանց դժուարութեան յաջորդութեան պահուին էր: Եթէ պահ մը աթոռի պարապութենէ ետքը նոր ընտրութիւն ընել հարկ ըլլար, արդիւնքը շատ կեղակարծ պիտի ըլլար, տիրող ահագին դժուարութեանց հանդէպ, մինչ աթոռակիցներու ձեռնադրութեամբ, կաթողիկոսին մահուան վայրկեանէն կաթողիկոսութիւնը կը ժառանգէր աթոռակիցը կամ աթոռակիցներուն աւագագոյնը, և աթոռը վայրկեան մը իսկ դատարկ մնացած չէր ըլլար: Իրաւ՝ ազգովին ընտրութեան ձեւ մը չէր եղածը, բայց ազգային աթոռին անընդհատ շարունակութեան ապահովութիւնն էր: Բացառիկ ժամանակներու մէջ երբ կարեւորը հնարաւոր չէ, հնարաւորը կ'ըլլայ կարեւոր:

Կ. ՊՈԼՍՈՅ ՀԱՅԵՐ

**1483.** Նորութիւններ են զորս հետզհետէ պատմութիւնը մեր առջեւը կը հանէ այդ միջոցին, և անոնցմէ մէկն ալ Կոստանդնուպոլսոյ մէջ նոր և մեծ աթոռի մը սկզբնաւորութիւնն է, պատրիարքութեան անունով: Կոստանդնուպոլսոյ մէջ հայաբնակութեան մը գոյութիւնը պատմութենէն ակներեւ է, սակայն հնագոյն ժամանակներու թեմակալ իշխանութիւնը բացարձակապէս տեղական և եղական ըլլալով, միեւնոյն քաղաքի մէջ մէկէ աւելի թեմակալ եպիսկոպոս չէր ըլլար, և բոլոր վիճակի մը մէջ գտնուողներ միեւնոյն եպիսկոպոսին կը հնազանդէին, և նոյն եկեղեցիէն հոգեւոր մխիթարութիւն կ'ընդունէին: Հետեւապէս Հայերն ալ Կոստանդնուպոլսոյ մէջ իրենց յատուկ եկեղեցական դիրք մը չունէին, թէպէտեւ քաղաքական դիրքին տիրապետելու չափ թիւ և ազդեցութիւն ունէին, բանակին մէջ մեծ ոյժ կը կազմէին, կայսերական թիկնապահ գունդին լաւ մասն էին, բազմաթիւ և քաջ զօրավարներ ունէին, պալատական պաշտօնեաներու շարքին կը գտնուէին, և կայսերական գահն ալ գրաւելու կը յաջողէին: Յունական Հայաստանին բնակիչներն ու Պարսկական Հայաստանին փախստականներն էին՝ որ այդ տարրերը կը կազմէին: Որչափ ալ Քաղկեդոնի խնդիրը՝ խտիր մը կը դնէր Յոյներուն և Հայերուն մէջ, սակայն Հայերը կամ այն էր որ ստիպեալ կը

համակերպէին, և կամ անհատաբար իրենց խղճմտութիւնը կը պահէին, բայց Հայ եկեղեցի և Հայ թեմակալութիւն չկար, ոչ Կոստանդնուպոլիս և ոչ կայսերութեան ուրիշ կողմերը, Մեծ-Հայքէն և Փոքր-Հայքէն զատ՝ ուր բնիկները Հայեր էին։ Գաղթականութեանց Հայերուն յատուկ եպիսկոպոսներ ձեռնադրելը, և զանոնք Յոյն կամ Ասորի եպիսկոպոսներու մօտ զետեղելը Թաչիկ Արշարունիին օրով սկսած ցուցուցինք (§ 785), սակայն ընդհանուր ակնարկ մըն է գիտցածնիս, տեղով ու թուով և յաջորդութեամբ տեղեկութիւններ չունինք, իսկ Կոստանդնուպոլսոյ վրայ ա՛լ աւելի նուազ են մեզի հասած տեղեկութիւնները, և Ստեփանոս Յուսիկ եպիսկոպոսը, Ստամպօլի կամ Կոստանդնուպոլսոյ եպիսկոպոս անունով չըլլալը՝ իր տեղը բացատրեցինք (§ 1230)։ Կոստանդնուպոլսոյ մէջ Հայ եկեղեցիի մը յիշատակին շատ ուշ կը հանդիպինք 1360ին, քերականութեան մը յիշատակարանին մէջ, որ ընդօրինակուած է ի յուշատակարանս Յունաց, ի Գաղատա Կոստանդնուպօլիս, ընդ հովանեաւ սուրբ Սարգսի (ՑԱՇ. 782), և Ս. Սարգիս անունը վստահութիւն կը ներշնչէ թէ Յունական եկեղեցի մը չէ։ Յիշուած տարին կ՚իյնայ այն շրջանին, երբ Հայերը աւելի Լատիններուն վրայ կը կրթնէին, և Յոյներ՝ Հայերը իրենց մօտեցնելու ջանքեր կ՚ընէին։ Սակայն այդ Ս. Սարգիս եկեղեցին ուրիշ կողմէն ծանօթ չէ, և տեղն ալ ճշդել դժուար է, թէև քաղաքամիջի շինուած մը կ՚երևի Յոյն եկեղեցիներու սրբութիւնները յիշելէն։

**1484.** Ստոյգ կերպով Կոստանդնուպոլսոյ մէջ շինուած Հայ եկեղեցի մը՝ այժմեան Ղալաթիոյ եկեղեցին է, ոչ բուն և պարսպապատ քաղաքի մէջ շինուած, այլ քաղաքին հանդիպակաց կողմը, Բերայի արուարձանին ծովափնեայ ստորոտը, որ Գենուացիներէն Ղալաթա (Calata) էր կոչուած, իբր քարափ կամ բեռներ թափելու ծովափ։

**ՂԱԼԱԹԻՈՅ ԵԿԵՂԵՑԻՆ**

Այդ եկեղեցւոյն հիմնարկութեան ժամանակը ցուցնող փաստ կը նկատուի անոր ճակատը այսօր ալ երևցող արձանագրութիւնը, որուն մէջ յիշուած անունները 1391 թուականին կը տանին, թէպէտ 1436 գրուած է (ԿՈԼ. 110), բայց այն 1733 էն առաջ դրուած արձանագրութիւն մը չէ (ԿՈԼ. 110), որով ցուցուած թուականէն և գործէն երեք կամ երեքուկէս դար ետքը գրուած վկայութիւն կ՚ըլլայ։ Ջանց կ՚ընենք ըսելու թէ զանազան տեղեկութիւններու հետևելով, կրնայինք 1733էն աւելի ետքը զետեղուած ըսել արձանագրութիւնը, հիմնուելով ինչ ինչ տեղեկութեանց վրայ։ Հմուտ գրող մը, Երեմիա Քէօմիւրճեան, Հայոց 885, այսինքն 1436ին կը դնէ շինութիւնը (ՁԷԼ. 74) և Կաֆայեցի ողբերգականին կ՚ըսէ ընդհանուր կերպով, և որուն անձի անուն չտար, ինչպէս արձանագրութիւնը մուծած է։ Շինողներուն Կաֆայեցի ըլլալը՝ բաւական եղած է ոմանց համար համեմատուածներու հիմնարկութիւն կարծել այն եկեղեցին, սակայն Կաֆայի ոչ ամբողջ հայրենակութիւնը, այլ մի մասը միայն Ունիթորներու հետևած էր, և Կաֆայի մէջ ալ հայադաւաններու եկեղեցիներ կային, Գենուացւոց իշխանութեան ներքև։ Արձանագրութեան մէջ յիշուած Կոզմոս անունն ալ իբր Կամիտասի փոխանցում, բան մը չապացուցաներ, զի քաղաքական համակերպութեան հետևանք է և ոչ դաւանութեան, թող որ Կոզմաս անունը անսովոր չէր Հայոց համար, և ուրիշ տեղ Կոզմոսը Կոմս ալ գրուած է, որ պատուանուն մըն է։ Վերջապէս Գենուացիք, առևտրական մարդիկ, շահադիտական քան կրօնական յարաբերութեանց հետամուտ, կ՚աշխատէին Հայերը մօտեցնել իրենց շահին և իրենց օգտին։ Հետևաբար Հայ եկեղեցիի մը շինութիւնը քաջալերելնին, աւելի հայադաւաններուն համար պէտք էր, զի համեմատուածները Լատիններուն եկեղեցիներովն ալ կը բաւականանային, մանաւանդ թէ կը նախադասէին ալ։ Միանգամայն պիտի աւելցնենք թէ Քէօմիւրճեանի յԱնուան Նախնական շինեցին բառը (ՁԷԼ. 74) երբեք վերաշինութիւն իմացնելու գիտում չունի, քանի որ նա կը դիտէ առաջին շինութիւնը իմացնել, և արդէն լուսագոյն ձեռագիրներ յԱնուան Նախնական ունին, որ Կաֆացոց ծագումը կը ցուցնէ, և ուրիշ ոչինչ։ Միանգամայն 1436 թուականը շատ յարմար կու գայ Նոտայի և

Յովհաննէս եպիսկոպոսներուն Կոստանդնուպոլիս գտնուելուն, որոնք հաւանական չէին, զի միութեան կը հրաւիրուէին (§ 1435)։ Այդչափը պատմական ճշդութեանց համար, ապա թէ ոչ տարիներու տարբերութիւնը՝ գործին իսկութիւնը չայլայլեր։ Պէտք չէ նաեւ մոռնալ, որ թէ Քէօմիւրճեանը ընդ Յունաց տէրողութեան (ՉԷԼ. 74) և թէ արձանագրութիւնը ընդ իշխանութեամբ Յունաց, հրաման տուեալ լինել (ԿՈԼ. 110) կը գրեն, որով Գենուացիներու միջամտութիւնը կամ համաձայնութեան ենթադրութիւնը այս կողմէն ալ հիմ չգտներ։ Ղալաթիոյ եկեղեցւոյն 1436 թուականէն՝ մինչեւ Օսմանեան տիրապետութեան 1453 տարին, միջոցը շատ քիչ էր, որ Հայ գաղթականութիւնը կարենար սովորական ընթացքով ընդարձակուիլ, և տեղական Յոյն տարրին հակակշռող ոյժ մը կազմել, որով միշտ կ'արդարանար Ֆաթիհի հոգածութիւնը Հայ գաղթականութիւնը նոր մայրաքաղաքին մէջ աճեցնելու (§ 1475), և մաս մը յորդորմամբ ու մաս մը ստիպմամբ Փոքր-Ասիոյ քաղաքներէն խումբ խումբ Հայեր Կոստանդնուպոլիս փոխադրելու։ Այդ նոր աշխատութիւնը շարունակած է մինչեւ 1461, երբ Մէհէմմէտ իւր նպատակն ու քաղաքական դիտումը լրացնելու համար, Հայերուն վրայ ալ ընդարձակեց այն քաղաքական կամ լաւ եւս կենցաղական դրութիւնը, զոր Յոյներուն համար կազմակերպեց իր տիրապետութենէն անմիջապէս ետքը։

**ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ**

**1485**. Իսլամ պետութեանց համար կարեւոր ու կենսական խնդիր մը եղած է իրենց հպատակ քրիստոնեայ ժողովուրդներուն կենցաղական դիրքը ճշդել, և այդ մասին օրինական կացութիւն մը կազմել։ Այդ դժուարութեանց պատճառը իրենց քաղաքական և կենցաղական օրէնսդրութիւնն էր, որ բովանդակ կրօնական սկզբունքներու և Ղուրանական պատգամներու վրայ հիմնուած ըլլալով, անհնար էր քրիստոնեաներու պատշաճեցնել։ Ուստի երկու ծայրայեղ որոշումներու կը մղուէին, ինչպէս որ պարագային կերպերը կը գրգռէին. կամ կոտորածով կը սպառէին և բռնութեամբ կրօնափոխ կ'ընէին, և կամ զինուորական և ելեւմտական վարչութիւնները իրենց վերապահելով, բոլոր կենցաղական օրէնքները անոնց կամքին կը թողուէին, անոնց մէջէն պատասխանատու պետ մը նշանակելով։ Այդ վերջին ձեւին գործադրութիւնն էր Արաբացի ոստիկաններու քովը Հայ պատրիկներու անուանումը, որոնք Հայոց ընտանեկան ու ազգային ու կրօնական կեանքին լիազօր կառավարիչներն էին, մինչ ոստիկաններ զինուորական և ելեւմտական գործերով միայն կը զբաղէին և գերիշխան դիրքը կը պահէին։ Նոյն ձեւին բարգաւաճումն էր, պատրիկներուն թագաւորի անուն և կերպ տալը՝ առանց իսկապէս պատրիկներուն դիրքէն բարձրանալու։ Իսկ ինչ որ անկէ ետքը Թաթարներու և Թուրքերու, Եգիպտացիներու և Գարամանցիներու ներքեւ գործադրուեցաւ, իսկապէս տարբեր չէր, միայն փոխանակ ընդհանուր պատրիկ մը ունենալու, տեղական մանր քրիստոնեայ իշխանները նոյն ձեւը կը պահէին ամփոփ շրջանակներու մէջ։ Ֆաթիհի կացութիւնը աւելի ճարտար ձեւ մը կը պահանջէր։ Նա իւր մայրաքաղաքը կը հաստատէր քաղաքի մը մէջ, որոյ բնակչութիւնը քրիստոնեայ էր, և Իսլամ բնակչութիւնը նոր պիտի սկսէր, նա չէր կրնար քաղաքը անմարդացնելով նորէն սկսիլ, և քաղաքագէտ ու քաղաքակիրթ պետութիւն մըն ալ կազմակերպելու ձգտումներն ունէր։ Քրիստոնեայ տարրը պէտք էր մնար, իւր յատուկ կենցաղական օրէնքներով պէտք էր ապրէր, իսլամական օրէնքները անոնց պարտադիր ընել անհնար էր, պատրիկ մը կամ իշխան մը հաստատելն ալ զօրացնել կ'ըլլար մայրաքաղաքի քրիստոնէից դիրքը, որ անյարմար էր մայրաքաղաքի մը համար։ Արդէն Յոյն ժողովուրդն ալ իսլամական օրէնքներու ներքեւ ապրելու անհնարութիւնը նախատեսելով, խմբովին գաղթելու խորհուրդը կ'որոճար, գոնէ հայրապետական աթոռը քրիստոնեայ հովանաւորութեան մը ներքեւ տանիլ կը մտածէր։ Այստեղ մէջտեղ եկաւ Ֆաթիհի քաղաքագէտ գլուխը։ Նա մտածեց թէ իսլամ ժողովուրդին կենցաղական օրէնքները իրենց կրօնքէն կը բղխէին, օրէնքի պաշ-

տօնեաները իրենց օրէնսգէտ կրօնականներն էին, պաշտօնեաներուն ալ գլուխը մեծ դենպետն էր։ Ըստ այսմ կենցաղական ճիւղը օրէնքով և օրէնքի պաշտօնեաներով կրօնքի շրջանակին մէջ կը պարունակուէր։ Միեւնոյն ձեւը որոշեց յարմարցնել քրիստոնեաներուն, և նախապէս Յոյներուն, որ կենցաղական օրէնքնին պահեն իրենց կրօնքին համաձայն, իրենց կրօնքին պետը ըլլայ պաշտօնէութեան ալ գլուխը։ Ինքն իրեն պահեց միայն Յոյն կայսրներուն դերը, որ էր կրօնքի պետը կամ պատրիարքը հաստատել և հաչակել։ Աթանաս պատրիարք պատերազմին մէջ սպանուած էր, Ֆաթիհ հրամայեց նոր մը ընտրել, և ժողովուրդը ուրախութեամբ ներկայեց Գէորգ Սկոլարիոս գիտնական եպիսկոպոսը, որ եղաւ Գեննադիոս Բ, և Ֆաթիհ զայն հաստատեց միեւնոյն շքեղ արարողութեամբ, որով Յոյն կայսրներ պատրիարքները կը հաստատէին, և անոր տուաւ իւր կրօնակիցներուն կենցաղական կացութեան վերաբերող իշխանութիւնները։ Հին ժամանակի պատրիկներուն դիրքն էր որ պատրիարքներուն կը տրուէր, արդէն տաճկերէն հնչմամբ ալ փաթրիք կամ պատրիկ կոչուեցաւ պատրիարքը։

**ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆ**

1486. Թէ պետական և թէ պատրիարքական դիւաններուն հրդեհները շատ կարեւոր գիրեր ոչնչացուցած են, և այսօր չգտնուիր սկզբնական արտօնագիրը որով Մէհէմմէտ Ֆաթիհ վճռեց պատրիարքական իշխանութեան ձեռնհասութիւնները։ Միայն իրարմէ փոխանցուելով կազմուած վերջին պաշտօնագիրները, և գործածութեամբ պահուած սովորութիւնները կը գծեն այն ձեւը, որ նախապէս 1453'ին կազմուեցաւ պատրիարքական իշխանութեան համար։ Սովորաբար քաղաքական անունով կը յիշուին պատրիարքներու տրուած արտօնութիւնները, այլ մենք կը նախադասենք կենցաղական անունով կոչել, որպէսզի պետական բառի իմաստ չառնէ։ Ըստ այսմ այն ամէն կենցաղական պահանջ, որ որեւէ կերպով կամ չափով կրօնքի հետ կապակցութիւն ունի, այդ պարունակին մէջ առնուեցաւ, և պատրիարքին իրաւասութեան յանձնուեցաւ, կրօնք, եկեղեցի, պաշտամունք, եկեղեցականութիւն, դաստիարակութիւն, ուսում, ամուսնութիւն, ընտանիք, ժառանգութիւն, բարեգործութիւն, անհատականութիւն, ազգահամար, և նմանիք, որոնք Թուրք կամ Իսլամ ժողովուրդին համար մեծ դենպետին իրաւասութեան կը պատկանէին։ Միանգամայն պատրիարքին իշխանութեան ենթարկուեցան, եպիսկոպոս, վարդապետ, և քահանայ, ինչպէս դենպետին կ'ենթարկուէին նահանգներու և գաւառներու և քաղաքներու կրօնաւորները և դատաւորները։ Մեր տուած տեղեկութիւնները յայտնապէս կը ցուցնեն, թէ այդ դրութիւնը, որ ստէպ առանձնաշնորհում անունով կը յիշուի, բնաւ շնորհք մը, ազատ պարգեւ մը, և բացառիկ առաւելութիւն մը չէ, այլ կատարելապէս Իսլամ ժողովուրդին ունեցած դիրքին հաւասարաչափ զուգակշիռն է, և Օսմանեան պետութեան օրէնսդրական դիրքին բացարձակ պահանջն է։ Հակառակ պարագային պէտք էր համայնաջինջ սպառմանց կամ բռնապետական ստիպմանց ձեւը գործադրել, եթէ Ֆաթիհի որչափ աշխարհակալ նոյնչափ աշխարհագէտ միտքը չուզէր՝ ամէն կերպով այդ վայրագ ձեւերէն խորշիլ, և քաղաքակիրթ երկրի մէջ հաստատուող տէրը նոր պահանջներուն ընտելացնել։ Այդ համառօտ նկարագիրը որչափ և նախապէս Յոյն ազգայնակութեան վրայ ձեւուեցաւ, սակայն կարեւոր էր մեզի համար ալ, որովհետեւ իբրեւ սկզբնատիպ ծառայեց Հայերուն ալ տրուած կամ օրինադրուած ձեւին։

**ՀԱՅՈՑ ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԻՒՆ**

1487. Կոստանդնուպոլսոյ առման թըւականէն եօթը ութը տարի անցեր էր, և հետզհետէ բերուած կամ եկած գաղթականութիւնները հայաբնակութեան լաւ բազմութիւն մը կազմած էին, և առանձինն մասգրութեան ալ առարկայ եղած էին։ Ֆաթիհ զանոնք հետզհետէ կը զետեղէր քաղաքին պարիսպներուն ներքեւը կարեւոր դուռներուն մօտերը, թէ Մարմարայի ծովեզերքին, թէ ցամաքակողման գիծին և թէ Ոսկեղջիւրի եզերքներուն ուղղութեամբ, որոնք ռազմագիտութեան և ապահովութեան տեսա-

*կէտէն մեծ կարեւորութիւն ունէին, եւ Յոյն տարրը այնտեղերը պահել յարմար չէր նկատուեր։ Երբոր Հայերը այնչափ շատցան որ բնակչութեան կարեւոր մասը եղան, եւ երբ իրենց ներկայութեան այսչափ կարեւորութիւն տրուեցաւ, պէտք էր անոնց ներքին եւ կենցաղական դիրքն ալ բարձրացնել, եւ Յոյներուն հանդէպ համահաւասար կացութեան մէջ դնել։ Օսմանեան պետութեան սահմաններուն մէջ գտնուող Հայեր առաջ ալ առանց հովուող պետի մը չէին մնացած, թէպէտեւ անոնց կանոնաւոր եւ շարայարեալ յիշատակները կը պակսին, իսկ մեզ դժուար է մանր խնդիրներով զբաղիլ։ Ցրիւ ակնարկներ մեզի կը ներկայեն Յովակիմ եպիսկոպոս մը, որ Կուտինա քաղաքի Հայ եկեղեցին նորոգած է, որ Պրուսայի եպիսկոպոս կոչուած է (01 ՕՐԱ. 79), որ Փիլիպէի ալ առաջնորդ յիշուած է (ՓԻՐ. 224), եւ որ Կոստանդնուպոլսոյ Հայերուն հովուեր պեան եղած է։ Այդ յիշատակութիւններէն դժուար չէ հետեւցնել, թէ Յովակիմը՝ Օսմանեան պետութեան ներքեւ գտնուող Հայերուն առաջնորդն էր, համապատասխանելով Օսմանեան սուլտաններուն տեղափոխութեանց, որ ինչպէս գիտենք, սկսան Սէօյիւտլիւ Կուտինայի մօտերը, անկէ անցան Պրուսա, անկէ Ադրիանուպոլիս, անկէ Կոստանդնուպոլիս, եւ Յովակիմ եպիսկոպոս ալ նոյն պարունակութեանց մէջ տեղափոխութիւններ կատարեց։ Չենք ուզեր ըսել թէ բոլոր տեղափոխութեանց ժամանակակից եղած է, վասնզի Օրխանի Պրուսա հաստատուելէն (§ 1385) մինչեւ Ֆաթիհի Կոստանդնուպոլիս հաստատուիլը (§ 1475), դարէ մը աւելի ատեն անցած է։ Բայց յայտնի է, թէ բոլոր հին ու նոր օսմանեան կեդրոնները միեւնոյն Յովակիմի վիճակը կազմած են, եւ իր պաշտօնին բերմամբ է, որ վերջին անգամ Կոստանդնուպոլիս եկած է։ Որոշ չենք գիտեր թէ ինչ եղած է այս Յովակիմին նախընթացը։ Անուանի նոյնութիւնը միտք կը ձգէ Յովակիմ Հալէպի եպիսկոպոսը, որ 1438ին Կաֆայէ Հռոմ գացող պատգամաւորութեան մէջ կը գտնուէր (§ 1437)։ Կոստանդնուպոլսոյ Յովակիմը մինչեւ 1474 կը յիշուի (11 ԱՄՍ. 473), եւ բոլորովին անհնարին չէ երկու անունները նոյն անձի վրայ միացնել, զի Հռոմ գացած ատեն 40 տարեկան ըլլալով ալ 76 տարեկան կ՚ըլլար 1474ին, ուսկից եաքը շատ ապրած չէ։ Յովակիմներու նոյնութիւնը, թէ ոչ ստուգապէս, գոնէ հաւանապէս մտածել կու տայ թէ Կիլիկիոյ նախկին պատգամաւորը վերջէն ալ Կիլիկիոյ աթոռին հետ եղած է, եւ Կարապետի կողմը յարած, ուսկից կը հետեւի Օսմանեան պետութեան Հայերուն նախապէս Կիլիկիոյ աթոռին հետ կապուած ըլլալը, արդարացնելով անագան կազմուած ցուցակին պարունակութիւնը (§ 1479)։*

ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՁԵՌՆՀԱՍՈՒԹԻՒՆ

**1488**. *Սովորաբար կը պատմուի թէ Ֆաթիհ ուզելով Հայերու դիրքը կանոնաւորել եւ բարձրացնել, ուրոյն անոնց ալ պետ մը տալ Յունաց պատրիարք Գեննադիոսի համար կազմուած կերպով եւ արտօնութիւններով, եւ այս նպատակով Յովակիմը 1461ին Պրուսայէ կանչեց, եւ Հայերու հովուեր պետ հռչակեց, Պատրիարք կամ ֆօրիքէ անունով եւ իրաւունքով։ Այս պատմութիւնը կը լրացուի Կոստանդնուպոլիսի գրաւուելէն առաջ տրուած խոստումով (ՉԱՄ. Գ. 500), եւ կ՚աւելցուին նախընթաց մերժումեան, եւ մինչեւ իսկ յաղթականին սուրը օրհնած ըլլալու պարագաները։ Չենք կրնար վաւերական աղբիւրներով ճշդել այդ կէտերը, բայց եւ ոչ կրնանք ընդունիլ որ Յովակիմ առաջնորդ 1453էն մինչեւ 1461 Կոստանդնուպոլիս գալ ուզած չըլլայ, եւ այնտեղ հաւաքուող Հայերն ալ իրենց դիրքը ամրացնելու հետամուտ եղած չըլլան։ Յովակիմի ստացածը նոր պաշտօն չէր, զի արդէն արեւելեան Փոքր-Ասիոյ եւ հարաւային Եւրոպիոյ Օսմանեան գաւառներուն առաջնորդն էր, եւ ինչ որ Ֆաթիհէ կը ստանար քրիստոնեաներու համար կազմակերպուած նոր կացութեան գործադրութիւնն էր։ Միայն առաւելութիւնը զոր Հայեր կը ստանային, պատրիարք անունով պատուուած եւ պատրիարքի իրաւունքներով ճոխացած պետ մը ունենալն էր։ Սակայն տրուած պատրիարքութիւնը լոկ արտաքին պատիւ եւ արտաքին իրաւունք էր, եկեղեցական*

նուիրապետութեան տեսակէտով պատրիարքական աթոռ մը հաստատել վերապետական կարողութենէն վեր էր, և բարձրագոյն եկեղեցական իշխանութենէ մը այդպիսի իրաւասութիւն կամ աստիճան հաստատուած չէր։ Վասնզի ոչ Սիսի և ոչ Էջմիածնի աթոռները, որչափ որ գիտենք, Կոստանդնուպոլիսով զբաղած չեն։ Բայց զբաղելու ալ պէտք մը չկար։ Յովակիմ արդէն կանուխէն ունէր առաջնորդական իշխանութիւնը, և եթէ նոյնինքն Փլորենտիա գացող և 1440'ին Փլորենտիայէ դարձող Յովակիմն էր, հաւանաբար Վահկացիի օրէն, գոնէ Մուսաբէգեանցի օրէն անորոշ սահմանով վիճակի մը ընդհանուր առաջնորդը եղած էր։ Իր տեղափոխութիւնը պատահական էր, Կիրակոսի ու Գրիգորի շփոթութեանց միջոցին իր պաշտօնը շարունակած էր, և վերջէն ալ Կարապետի կողմը բռնած էր։ Ըստ այսմ տարածեալ վիճակի մը առաջնորդն էր, որուն ինչ ինչ արտօնութիւններ ալ աւելցած էին։ Առաջին վայրկեանէն պէտք ալ չկար որ Յովակիմի համար ստեղծուէր աւելի ընդարձակ իրաւասութիւն մը, վասնզի գրեթէ բովանդակ Օսմանեան կայսրութիւնը մէկ վիճակի պէս կը ներկայանար, և իրաւասութեան ընդարձակուիլը բնական ընթացքով առաջ եկած էր, քանի կ'ընդարձակուէր Օսմանեան պետութիւնը, իսկ սա Կոստանդնուպոլսոյ մէջ նստող առաջնորդը պէտք էր ճանչնար իբր բոլոր իր հպատակ Հայերուն հոգեւոր պետը՝ ինչ ալ ըլլային անոնց իրենց մէջ ունեցած եկեղեցական յարաբերութիւնները։ Իսկ Կոստանդնուպոլսոյ պատրիարքներուն ոչ միայն արտաքին և կենցաղական իրաւունքին, այլեւ անոնց ներքին և հոգեւորական իրաւասութեան՝ ուրիշ առաջնորդներու վրայ տարածուիլը, հետեւանք եղաւ նորահաստատ դրութեան, որուն մէջ դժուար էր կրկին իրաւասութեանց սահմանը գծել ու զատել, քանի որ պատրիարքներուն յանձնուած գործառնութիւնները իրենց բնութեամբ կրօնական և եկեղեցական սերտ առնչութիւններ ունէին։ Այսպէս պահանջը սովորութեան և սովորութիւնը օրէնքի փոխուելով, Կոստանդնուպոլսոյ Հայ պատրիարքները Օսմանեան կայսրութեան Հայերուն վրայ թէ եկեղեցական և թէ կենցաղական իրաւասութիւն կը ստանային, թէպէտև այս մասին հայրապետական կամ ժողովական յատուկ որոշում մը տրուած չըլլար։

ՍՍՈՅ ՊԱՏԱՀԱՐՆԵՐ

**1489**. Պարագաները հետեւանօք, երկու կաթողիկոսական աթոռներուն ալ Կոստանդնուպոլսոյ գործերով զբաղած չըլլալը յայտնեցինք, սակայն եթէ զբաղիլ ալ ուզէին, իրենց չուրջը կատարուող գործողութիւններ պիտի չներէին իրենց նպատակին հասնիլ։ Սսոյ մէջ Կարապետի կաթողիկոսութիւնը միայն 2 տարի տեւած կը կարծուէր, և 1449'ին իրեն յաջորդ կը դրուէր Ստեփաննոս Սարաձորեցին (ՉԱՄ. Գ. 491), սակայն նորագոյն գտնուած յիշատակներ մինչև 1477 կը յետաձգեն Կարապետին մահը (ՍԻՍ. 539), և 1461'ին կը գտնենք Սսոյ մէջ տեղի ունեցած խռովութիւն մը։ Սսոյ իշխան Մելիք Խօմէր, անշուշտ նախկին իշխան Մելիք Խօմէրի թոռ, զոր յիշեցինք Թէոդորոս Բ'ի սպանութեան առթիւ (§ 1373), իր բռնութեամբ այնչափ զայրացուցած էր Սսեցիները, որ Հայ ու Տաճիկ միաբանեցան զայն սպաննել, և իրենց խորհրդակցութիւնը կատարելու համար ֆողէ է ֆէլէրէ ֆնոցէն — Կորողէտ կոնօղէկամ։ Մելիք Խօմէր Թիւրքմէն գունդեր վարձեց իր պաշտպանութեան, կռիւ ու պատերազմ տեղի ունեցաւ երկու կողմերուն միջեւ, կոտորածներ և թալաններ քաղաքը աւերեցին, և Թիւրքմէնները ճոքն է ոոորէ յոնոոն, է կոնօղէկոոորանն ոէր Կորողէտ կոնօղէկոոէն, և նուշնեցէն ղվանքն և ղոոորէ մոոոնն և ղոմնոյն ոբէոոնէոն (ՍԻՍ. 544)։ Արդ այս տարին էր որ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութիւնը կը հաստատուէր, բայց անկէ ետքն ալ Սիս խաղաղ ու ապահով մնացած չէ։ Այս արկածէն քիչ ետքը 1464'ին Զագամ պէկ մը կը ցուցուի իբր տէր Սսոյ, որ անշուշտ Մելիք Խօմէրը մերժելով տիրացած է, և անոր վրայ կու գայ Մարաշի պէկին որդին Շահսուար, որ Դաշտային Կիլիկիա գրաւելէն ետքը 1468 յունիս 2'ին Սիսը կը պաշարէ, և Սսեցիք ութ յարձակումներ վանելէ ետքը վերջապէս անձնատուր կ'ըլլան դեկտեմբեր 23'ին, և

Սսոյ իշխան կը նշանակուի Շարամերթ՝ Շահսուարի կողմէն։ Սա Հայերը կը հարըստահարէ, գլխաւորները կոխեալ գնէ ի հողն, և փախստականներն ալ փրկանքի պատրըւակով ձեռք կը ձգէ, և ամենք ալ ի հողն գնելով, լաւ մը կը նեղէ, և զմալն և զնէանսն և շատ բաղձ կը կողոպտէ։ Բայց այն երկար չվայելեր, վասնզի վրան կը հասնի Եաղուբ Թիւրքմէնը 1469'ին, որ քաղաքը թալանեց, և շատ մալ եառ և շատ անօթ ոսկը-թօթեանց և մեկնեցաւ։ Շահսուար Սիսին մէջ հազար անուոր այլազգիներ կը փոխադրէ, 1470'ին ժամանակէն ետքը գրեթէ անմարդացեալ քաղաքը չէնցնելու համար։ Այդ ժամանակին մէջ մեռած է նաեւ Հեթում Խազենց, Սպիտակ Երէց մականուանեալ Աջոյն Ս. Լուսաւորչի Աջոյն (ՍԻՍ. 545), և ուրիշ սրբոց աջերուն (ՍԻՍ. 540), պաշտօն մը, որ Կարապետի օրով հաստատուած էր Սսեցիներու կամքով, Աջի նոր անյայտացման վտանգին առջեւն առնելու համար։ Սա ինքն կը նկատուի իբր նախահայր Աջապահեանց կամ Աջապահեանց գերդաստանին, որ զօրաւոր դիրք ստացաւ դար մը ետքը, ուսկից շատ եպիսկոպոսներ եղան, և որ վերջէն Սսոյ աթոռին ժառանգական յաջորդութիւնը ձեռք անցուց։ Կարապետ Եւդոկիացիին դառնալով ցարդ պատմուածները կը ցուցնեն, թէ բաւական տագնապալի օրեր անցուցած է իր բովանդակ երեսնամեայ կաթողիկոսութեան մէջ, և թէ իրեն դիւրին չէր հեռաւոր գործերով զբաղուիլ։

**1490.** Լաւագոյն չէին Գրիգոր Ջալալբէգեանի Էջմիածնի մէջ անցուցած օրերը։

**ԶԱՔԱՐԻԱ ԵՒ ՍԱՐԳԻՍ**

Ցորմէ հետէ Կիրակոս մեռաւ, և Զաքարիա Աղթամարցին զինքն Ամենայն Հայոց հայրապետ կարծեց, իր բոլոր ճիգերուն նպատակն էր կերպով մը Էջմիածին անցնիլ, և իրօք գրաւել հայրապետութեան նախնական և նուիրական աթոռը, որ անգամ մըն ալ հռչակուած էր Վաղարշապատի ժողովով և նոյն իսկ Զաքարիայի համաձայնութեամբ (§ 1476)։ Բաւական միջոց մը անցած էր 1443'էն ասդին, և Զաքարիա չէր կրցած իր նպատակին հասնիլ, սակայն իր ջանքերը զաղտնիք չէին, և Ջալալբէգեան հարկաւ մտահոգ էր իր աթոռին վրայ, ստիպեալ ըլլալով շարունակ անոր հնարքներուն առջեւն առնել, և Արիստակէսի աթոռակցութիւնն ալ (§ 1481) վերջնական դարման մը եղած չէր։ Այստեղ մէջտեղ կ'ելլէ Սարգիս եպիսկոպոս մը, Էջմիածնի միաբանութենէն, որ իր ձեռքը կ'անցընէ Լուսաւորչի աջը, և նշանաւոր ուրար մը, և խաչվառի դրօշ կամ խաչալամ մը (ՉԱՄ. Գ. 503), և անոնցմէ կ'աշխատի իրեն բարձրանալու ճանպայ բանալ։ Անտեղի պիտի չըլլար Սարգիսը կաթողիկէին փակակալ կամ լուսարարապետ եղած ըսել, քանի որ դիւրութիւն ունեցած է յիշեալ առարկաներու տիրանալ։ Չամչեան այդ պարագայն կը գրէ, առանց աղբիւրը ցուցնելու, և թէպէտ Դավրիժեցին չյիշեր, բայց չենք կրնար եռթադրական ըսել Չամչեանի գրածը, և կ'ընդունինք Սարգիսի վերագրուած գողութիւնը։ Երեւանեցին ալ եղելութեանց շարքին չմտցներ Սարգիսի արարքը, այլ Աջն և ուրարը ու խաչվառը, Եգիպտոսէ Թաւրիզ բերուած և Ճիհանշահի ձեռքը դտնուած կը կարծէ, իբր թէ Եգիպտոս մնացած ըլլային Եգիպտացւոց ձեռք գերի իյնալէն իվեր (§ 1193)։ Բայց այդ ենթադրութեամբ՝ պէտք կ'ըլլար սսել Հեթումի ձեռօք կատարուած Աջին դարձը (§ 1198), կաթողիկոսներուն իրենց կոնդակներով զայն յիշելը, վերջին անգամ Սիսէն անյայտանալը (§ 1449), և Վաղարշապատի մէջ յայտնուիլը (§ 1456), զորս յայտնի վկայութիւններով հաւաստեցինք, և զորս նոյն ինքն Դավրիժեցին ալ կը յիշատակէ, և կը հաստատէ յատուկ ուսումնասիրութեամբ իրեն գտած ու զննած տեղեկութեանց համեմատ (ԴԱՎ. 321—328), որով կը դարմանէ ուրիշ տեղ պահած լռութիւնը, և կը վկայէ, թէ Լուսաւորչի սուրբ Աջն հանդերձեալ և սպասիւքն դարձուցեալ է ի Սսոյ և եկեալ է յէջմիածին, ու և ճանաչեալ է յԱղթամար (ԴԱՎ. 329)։ Երեւանեցիին տարբեր կարծիքը արդիւնք է միայն ամէն յիշատակարանները տեսած չըլլալուն։ Կը մնայ միայն ճշդել թէ ինչ միջոցով Սարգիս իր յանդուգն ձեռնարկը կատարեց։ Ըստ Չամչեանի՝ Գրիգոր և Արիստակէս կաթողիկոսներ իրարու հետ

գժտած էին, և Սարգիս պատեհ գտաւ Աջը իրեն ձեռք անցնելով Թաւրիզ երթալ, որ Ջհանշահը վաստկելով կաթողիկոսութիւնը իր վրան դարձնէ (ՉԱՄ. Գ. 503)։ Մեզի դժուար կ'երեւի Սարգիսի վրայ ենթադրել այնչափ յանդգնութիւն և միջոցներու առատութիւն, որ կարենար ուղղակի Թաւրիզ դիմելով Ջհանշահը իր կողմը վաստկիլ։ Այդ մեկնութիւնը կ'ընդունի Ջամիճեան ալ, բայց առանց իր կարծիքին պատմական հիմ մը ցուցնելու (ՉԱՄ. Ա. 7)։ Շատ աւելի հաւանական և ճշմարտանման պիտի ըլլար ըսել, թէ Սարգիս Զաքարիայէ գաղտ չհուած էր, և անոր գործը յաջողցնելու համար նուիրեալ կամ վաճառեալ գործակից մըն էր։ Զաքարիա իր տարիներէ իվեր որոճացած խորհուրդը գործադրելու համար երկու գլխաւոր պէտքեր ունէր, մէկն էր Ջհանշահը իւր կողմը վաստկիլ և միւսը Աջին տիրանալ, վասնզի Ջհանշահի հրամանով և զօրութեամբ աթոռին տիրացած ատենն ալ, ազգը զինքն չէր ընդունիր իբրեւ կաթողիկոս, բայց եթէ Լուսաւորչի Աջը մէկտեղ տանելով ուրիշ տեղ հաստատուէր։ Աջին անունն էր, որ մեծապէս ազդած էր հանրային կարծիքին վրայ Կիրակոսը ընդունելու համար, Աջի անունով յաջողած էր Կարապետ ալ նոր աթոռ հաստատել, Աջը պէտք էր որ Զաքարիայի ձեռքն ըլլար իւր կամքը օրինաւոր ընելու համար։ Ուստի ամէնէն առաջ Սարգիսի հետ համաձայնած էր, որ Աջը առնէ և Թաւրիզ իջնէ, ուր ինքն ալ պիտի հասնէր միւս պայմանը լրացնելու, որ է Ջհանշահի հրամանը ստանալ։ Ապա թէ ոչ Սարգիս, եթէ իրեն համար աշխատած էր, չէր կրնար այնչափ դիւրութեամբ տեղի տալ, և իրեն համար կատարած աշխատութիւնը Զաքարիայի վայելել տալ։

**1491.** Զաքարիայի նպատակին յաջողութեան համար յարմար առիթ մըն ալ եղաւ Ջհանշահի Թաթարներու վրայ տարած յաղթութիւնը, երբ մինչեւ Հրէ մայրաքաղաքը արշաւելէ ետքը, յաղթական փառօք դարձեալ եկն ի Բաղդատն էօր, ի քաղաքն շահաստան ի Թաւրէժ։ Զաքարիա խնդակցութեան և շնոր-

ԶԱՔԱՐԻԱ ՅԷՋՄԻԱԾԻՆ

հաւորութեան փութաց բազում ընծայիւ և պատարագօք, և երբ տեսաւ որ յոյժ սիրով ընդունեցին զինքն արքայն արքայից Ջհանշահն և դշխոյն Բէկըամ խաթունն, այն առեն համարձակեցաւ իրեն համար խնդրել Էջմիածնի աթոռը։ Անշուշտ պատճառանքներ պէտք էին Գրիգորը վար առնելով Զաքարիան բարձրացնելու համար, բայց մենք չենք գիտեր թէ ինչ տեսակ չարախօսութիւններ զօրացան։ Թերեւս Գրիգորի անտարբեր միտքը անհաճոյ երեւցաւ Ջհանշահի, հաւանաբար ալ Գրիգոր տարեկան հարկերուն վճարումը յապաղած էր, վերջապէս Ջհանշահ որոշեց Զաքարիան գոհացնել, անոր խնդրածն պատուոյ զգեստ տուաւ, շնորհեց միանգամայն զաջոյն զսուրբ Լուսաւորչեան, և հրամայեց Երեւանի իշխանին որ Զաքարիան տեղը բազմեցնէ։ Բոլորովին նոր է Ջամիճեանի մտածած կերպը, որ Ջհանշահ հրամայած ըլլայ Զաքարիայի և Սարգիսի յաջորդաբար կաթողիկոսութիւն վարել (ՉԱՄ. Ա. 7), որուն ոչ մի տեղ յիշատակը կամ ակնարկը չգտանք։ Գրուած է, թէ Ջհանշահ տուաւ նաեւ զսուրբ զԱջ Լուսաւորչին ձեռօք (ԴԱՎ. 324), սակայն չկրնար իբր իւր կողմէ ընծայ մը տուած ըլլալ (§ 1412), այլ միայն կրնայ փոխանցումին հաւանած ըլլալ, կամ թէ Զաքարիա այսպիսի ձայն մը հանած կ'ըլլայ, գործին փայլը աւելցնելու համար։ Զաքարիայի գովաբանը կ'ուզէ անոր յաջողութիւնը ողորմութեամբ Աստուծոյ և կամօք Լուսաւորչին ցոյց տալ, բայց իսկապէս հրամանաւ փատիշահին Զաքարիա եկաւ Երեւան, և անկէ Էջմիածին, արտաքին իշխանութեան ձեռնտուութեամբ տիրացաւ հայրապետանոցին, և ինքզինքը հռչակեց ինքնակալ պատրիարք ընդհանուր ամենայն քրիստոնէական ազգի, որք են ընդ ամենայն ոլորտս տիեզերաց (ԴԱՎ. 325), հարկաւ միայն Հայ քրիստոնեաները, և ոչ ամէն քրիստոնեաները իմանալով։ Զաքարիայի փառքը պատմող յիշատակագիրը՝ Գրիգորի ու Արիստակէսի անունները իսկ չյիշեր, սակայն անոնց կաթողիկոսութիւնը դադարած չէր, և Դավրիժեցին իւր սովորութեան համեմատ 1461 թուին կը գրէ. Նոյն տէր Գրիգոր, և Նոյն տէր Արիստակէս, այլեւս եղեւ կաթողիկոս

*տէր Զաքարիա* (ԴԱՎ. 336), *քանի որ այլեւս աթոռակիցներու չառութիւնը զինքը չէր խրտչեցներ, թէպէտեւ մենք ամէնքը միեւնոյն կերպով պիտի չկարենանք նկատել։ Նախ պէտք է որ Զաքարիայի գործը աւելի ճշդութեամբ դնենք* 1460*'ին, համեմատ Ստեփանոս Արծկեցի աւեղային վկայութեան, որ նոյն թուին նախ ի հայրապետութեան տեառն Գրիգորի գրելէն առաջ, վերջէն կ'աւելցնէ՝ ի հայրապետութեան տեառն Զաքարիայի, որ յայժմ աթ տիրեաց Էջմիածնին և Լուսաւորչի սուրբ Աջոյն* (ՓԻՐ. 196)։ *Պատերազմական գործողութեանց ալ յարմարագոյն եղանակը ամառնային միջոցը ըլլալուն, Զաքարիայի Թաւրիզ երթալը պէտք է դնել աշնան առեններ՝ Ջիհանշահի յաղթական դարձին, և ձմեռ չմտած ալ Էջմիածին հասնիլը, Հայոց* 909 *թուականին վերջերը, որուն յաջորդը* 910 *տարւոյն ամանորը կ'իյնայ* 1460 *նոյեմբեր* 26*'ին, և երկու թուականներու անխտիր գործածուած ըլլալը կ'արդարանայ։*

**1492.** *Զաքարիայի կաթողիկոսութեան վրայ խօսելով, շատ ճիշդ կը գտնենք վերոյիշեալ Արծկեցի յիշատակագիրին գործածած տէրեաց Էջմիածնի բացատրութիւնը, զի չենք կրնար օրինաւոր կաթողիկոսութեան պայմանները ճանչնալ մէկու մը վրայ, որ պետական իշխանութենէն միայն կ'ընդունի իւր պաշտօնը, և անոր գլուխը կ'անցնի արտաքին բռնութեան ձեռնտուութեամբ։*

ԿԱՆՈՆԱԿԱՆ ՏԵՍԱԿԷՏԸ

*Գրիգորն էր հայրապետութեան օրինաւոր աթոռակալ ճանչցուած անձը, ոչ մի ժողով և ոչ մի օրինական վճիռ չէր որոշած անոր դադարումը, և ոչ ալ ինքն կամովին հրաժարած էր պաշտօնէն, և ոչ իսկ նոր ձեւին համեմատ՝ Գրիգոր և Արիստակէս համաձայնած էին իրենց աթոռակից ճանչնալ Զաքարիա Աղթամարցին։ Հետեւաբար Զաքարիա, թէպէտ Աղթամարի մասնաւոր աթոռին կաթողիկոսն էր, այլ Էջմիածնի ընդհանուր և Ամենայն Հայոց աթոռին վրայ բռնի տիրապետող մըն էր, և այս տեսութեամբ չարդարանար առձեռն ցուցակներուն մէջ Զաքարիան՝ Զաքարիա Բ անուանով և թուահամարով օրինաւոր կաթողիկոսներու շարքին անցնելու սովորութիւնը* (ԺԱՄ. 635)։ *Գրիգորի և Արիստակէսի կողմէ դիմադարձութեան կամ բողոքի գործողութեան մը կատարուած ըլլալուն յիշատակը հասած չէ, բայց եթէ պետական ոյժին հանդէպ տեղի տալու պարտաւորութեան ալ, անով իրենց իրաւունքէն ինկած չեն ըլլար։ Հանրութեան կարծիքն ալ մեր ըմբռնումը ունեցած է, ինչպէս կը քաղուի* 910 *մեհեկին, այսինքն* 1461 *մայիսի վերջերը գրուած յիշատակարանէն, որ միայն ի հայրապետութեան տէր Գրիգորի կը յիշէ* (ՓԻՐ. 198)։ *Հաւաքարանը կը գրէ թէ Էջմիածին տեղ բազում պարտուց ներքև անկեալ էր, և Զաքարիա հատոյց զպարտս բոլորովին* (ՕՕ ԲԻՋ. 1195), *ինչ որ կրնայ ըլլալ իբր մեծագործութեան ցոյց և իբր համակրութիւն շահելու եղանակ, և նոյնիսկ Էջմիածնի յետամնաց տուրքերը վճարելով Ջիհանշահը գոհացնելու միջոց։ Բայց այս կերպով երբեք օրինաւորութիւնը գնած չըլլար։ Պարագաներն ալ կը ցուցնեն, թէ Զաքարիա շատ դիմադրութիւն չէ տեսած, որով Էջմիածինէ բացակայելու իսկ համարձակած է, բայց ասիկայ ալ բուռն զօրութեան և բռնադատեալ լռութեան նշանէ աւելի բան մը չէ։ Զենք կրնար նաեւ ճշդել թէ Գրիգոր և Արիստակէս ուր քաշուեցա՞ն և ինչ դեր վարեցին, կամ թէ ստիպուեցա՞ն Էջմիածնի մէջ ընկճուած ապրիլ, սակայն ամէն առթի մէջ Զաքարիայի օրինաւորութեան տեսակէտը երբեք չարդարանար։*

**1493.** *Զաքարիայի Էջմիածնի տիրանալէն քիչ ետքը,* 1461 *գարունին Ջիհանշահ անհեղ արշաւանք մը կազմեց Աքքոյունլուներուն դէմ, և նախ Խլաթի վրայ յարձակելով բոլոր երկիրը աւերեց ու աւարեց, և ամէն կողմ տարածեց զխաչս եկեղեցեաց, զսպասս սուրբ սեղանոյ, զնշխարս սրբոցն, զմատեանս աստուածաշնչեանց, և զարծաթեղէն անօթս ամենայն ժողովրդեանն, նոյնը սպառնալով ընել ի Բաղէշ, ի Մուշ, ի Խլաթ, ի Սասուն, և յամենայն գաւառս նոցա։ Զաքարիա, որուն գործունէութիւնը չենք ուրանար, փութաց մեծագոյն չարիքներու առջեւն առնուլ։ Ջիհանշահէ արտօնութիւն առաւ հաշտա-*

ԷՋՄԻԱԾԻՆԷ ՓԱԽՈՒՍՏԸ

*բարի դեր կատարել, և Ճիհանկիրի գնաց զայն զիջողութեան համոզելու* (ԴԱՎ. 325)։ *Ամիրա Բէկն աշխատեցաւ այդ բանագնացութիւնները լրացնելու համար, և վերջապէս կրցաւ Ճիհանկիրը հարկ վճարելու համոզել, և Ճիհանշահը իւր զօրքը ետ քաշելու հաւանեցնել, և առեալ զիւրագոյն հարկն, տարեալ մատոյց քաղաքէն Ճիհանշահի, և աւարեաց զամենայն ժողովուրդն, զՀայս և զՏաճիկս, ի յետոյ անցելոց։ Այդ այն պատճառաւ է, զոր յիշեցինք արդէն քաղաքական կացութիւնը բացատրած առեննիս* (§ 1474)։ *Ջաքարիա իրաւամբ փառաւորուեցաւ, մեծարանօք ելեալ յերկրոց քաղաքաց, ի Թաւրէժան քաղաքէն Ճիհանշահէ, և ի Քաղաք-ամիրային Ճիհանկիրէ, և նորէն դարձաւ էջմիածին աւելի զօրացած, 1461 յունիս ամսոյ առենները։ Բայց երբ Ջաքարիա աւելի ամուր կը կարծէր զինքը, այնտեղ սկսաւ իւր ձախողուածը։ Ճիհանշահ Աքքոյունլուներու դէմ արշաւանքը դադրեցնելով, իւր գունդերը դէպ արեւելք դարձուց Թաթարներու դէմ, Հայաստանի և շրջակայից կառավարութիւնը յանձնելով իւր Հասան Ալի որդւոյն, որ իւր հաչուոյն ինքն ալ դանձելու և շահելու միջոցներ կը փնտռէր, և Ջաքարիա՝ մշակուելու յարմար երկիր մըն էր, ուր երկուքին յարաբերութիւնները սկսան ցրտանալ։ Հասան Ալի սկսաւ Ջաքարիան ձեռք ձգելու և ստիպելու միջոցներ որոնել, և Ջաքարիայի գովարանը կը յաւելու թէ այդ ամէնը կը գործուէր նենգութեամբ չարախօսաց ոմանց։ Պիտի չհակառակինք այդ ակնարկը Գրիգորի և Առիստակէսի վրայ իմանալ, որոնք անշուշտ իրենց օգուտին պիտի ծառայեցնէին Հասան Ալիի ձգտումները, և Ջաքարիան հեռացնելու պիտի հետապնդէին։ Ջաքարիա ալ չուտով ձեռնթափ չեղաւ և իւր ճարպիկ գործունէութեան միջոցները ձեռք առաւ, բայց չյաջողեցաւ, և փախցաւ իսկ՝ երբ տեղեկացաւ թէ Հասան Ալի կ'ուզէ ըմբռնել զինքն, որ յաջողի պահանջել գանձս և ինչս։ Եղանակը յառաջած էր, և յաւուրս ձմեռայնոյ հասած էր, այսուհանդերձ Ջաքարիա ստիպուեցաւ էջմիածինը թողուլ և ծպտեալ կերպով հեռանալ, յանկարծ ձեռք չիյնալու համար, բայց չմոռցաւ իրեն հետ տանիլ զԱջն աւուր Լուսաւորչին* (ԴԱՎ. 326) *և խաչալամբ, որ նկարեալ կայր ի մի կողմն պատկերն տէրունական, և ի միւս կողմն Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի, և Թագաւորին Տրդատայ, և ընտրելոց կուսին սրբոյն Հռիփսիմեայ, և նշանաւոր ուրարը, ոսկեթել յօրինուածով և ազգի ազգի գունով երանգ երանգ զարդարեալ* (ԴԱՎ. 327)։

**ԱՂԹԱՄԱՐ ԴԱՌՆԱԼԸ**

**1494**. *Ջաքարիա Աղթամարայ կաթողիկոս և Ամենայն Հայոց աթոռին տիրապետող, ծպտեալ և անճանաչ կերպով ճանապարհորդեց էջմիածնէ մինչև Բերկրի, Բագրեւանդայ վանքին և Պայազիտի բերդին մէջն ալ ինքզինքը ծածկելով, մինչև որ հասաւ իւր բնիկ կաթողիկոսութեան սահմանը։ Բերկրիի մէջ Տէրյուսկանորդոյ վերին վանքը, որ Արգելան կը կոչուի, առաջին անգամ ինքզինքը յայտնեց, և ցոյց տուաւ մէկտեղ բերած սրբութիւնները, զգանձն տաճարոյն զԱջն աւուր Լուսաւորչին, հանդերձ խաչալամբ և ուրարաւ* (ԴԱՎ. 326)։ *Մեծ եղաւ ժողովուրդին խանդավառութիւնը, Լուսաւորչի պաշտելի Աջը Աղթամարի աթոռին ձեռքը անցած տեսնելով, և Բերկրիէ մինչև Աղթամար, ոչ եւս փախստականի, այլ յաղթականի փառաւորութեամբ ճանապարհորդեց Ջաքարիա։ Ամէն տեղ ընդառաջ ընթանային երգօք և մաղթանօք, և զենմամբ խոյոց և զուարակաց, և երկրպագութեամբ մատուցանէին աւուր Աջոյն և Հայրապետին, և համբուրէին զնա մեծաւ փափաքանօք։ Բոլոր ճամբուն վրայ եղող գիւղեր և աւաններ չարունակեալ թափօր կը կազմէին, բայց աւելի մեծ հանդէսներ տեղի ունեցան Վան, որոնց մասնակցեցաւ քաղաքի իշխանն Մահմուտ պէյ, Ճիհանշահի կաթնեղբայրը, և Ոստան, որուն Քուրդ իշխանը ընդհակառակն զաղտագողի նենգել և յափշտակել մտածեց։ Ուստի Ջաքարիա ստիպուեցաւ Ոստանէ շուտով հեռանալ, և Քարագաշի բերդէն նաւ մտնելով Աղթամար հասաւ 911 Նաւասարդ 16'ին, որ է 1461 դեկտեմբեր 11'ին, և ճշդիւ կը պատասխանէ օրհնելի աւուր Յակոբայ պահոցն* (ԴԱՎ. 329)։ *Հաշիւի առնելով էջմիածինէ Բերկրի հեռաւորութիւնը, և միայն աւուրց ինչ միջոց Վան մնալը, և Ոստանէ շուտով*

մեկնիլը, պէտք է իբր 20 օր առաջ դնել Զաքարիայի Էջմիածինէ հեռանալը 1461'ին նոյեմբերին վերջերը, որով տարի մը միայն տեւած կ'ըլլայ Զաքարիայի տիրապետութիւնը Էջմիածնի մէջ (§ 1491), եռամսեայ բացակայութիւնն ալ մէջը հաշուելով։ Աղթամարեան յիշատակարանը (00 ԲԻՋ. 1195), Զաքարիան նորէն Էջմիածին դարձած կ'ըսէ Աջը բերելէն ետքը, այլ և հոն մնացած, մանաւանդ թէ ըստ այլոց երկու տարի այն տեղ մնացած կ'ըսուի, և 1464'ին գերեվար եղած ի Նոյանէ (ՓԻՐ. 220), սակայն Բաղէշի պատգամաւորութենէն ետքը, դարձեալ նըստաւ ի յաթոռն իւր ի սուրբ Էջմիածինն պարագային հետ (ԴԱՎ. 326) չփոթուած է, զի Աջի փոխադրութիւնը ոչ թէ օրինական և յայտնի գործ մը եղած էր, որպէս ոմանք կարծած են (ՓԻՐ. 208), այլ գողունի յափշտակութիւն և փախուստ մը (ԴԱՎ. 327), ուսկից ետքը անհնար էր, որ Զաքարիա Աջը Աղթամար թողլով կարենար Էջմիածին դառնալ։ Հետեւաբար չարդարանար անոնց ալ կարծիքը, որ մինչեւ 1465 երկուսն եղբարցն մողեցող կը դնեն Զաքարիան (ԱՐՐ. 230)։

**ՍԱՐԳԻՍ ԱԹՈՌԱԿԻՑ**

**1495.** Զաքարիայի հեռանալովը Գրիգոր Ջալալբէգեան նորէն կացութեան տէր դարձաւ 1461 տարւոյ վերջին ամիսէն սկսելով, իրեն կողմը ունենալով Հասան Ալի, որ փոխարքայ մըն էր այդ կողմերուն վրայ, և զոր չահած էր Գրիգոր պէտք եղած միջոցներով։ Գրիգորի միշտ աթոռակից և գործակից մնաց Արիստակէս Աթոռակալ, որուն կողմէն 1462'ին Լեհաստանի Հայերուն կոնդակ մը ղրկուիլը (ՓԻՐ. 207), առիթ տուած է ոմանց նոյն 1462'ին մեռած ըսել Ջալալբէգեանը (ՋԱՄ. Գ. 506), մինչ յայտնի վրկայութիւններ շատ ետքը տակաւին գործի վրայ գտնեն Գրիգորը։ Դավրիժեցին 1466 թուականին ներքեւ կը գրէ. Նոյն տէր Գրիգոր, և նոյն տէր Արիստակէս, այլև եղև կաթողիկոս տէր Սարգիս (ԴԱՎ. 337)։ Երկրորդ աթոռակիցի մը աւելնալը նշան է Գրիգորի ծերացած և տկարացած ըլլալուն, որ գործակիցներ շատցնելու պէտք զգացած է, այլ զարմանալի է Սարգիսին այդ պաշտօնին կոչուիլը։ Այս այն Սարգիսն է, որ Աջը Էջմիածինէ գողնալով Զաքարիայի տիրապետութիւնը դիւրացուց, և Գրիգորի դիրքը խախտելու պատճառ եղաւ, և այժմ անոր մօտ և անոր գործակից կը տեսնենք։ Պատմութիւնը չէ բացատրած այդ փոփոխութեան գաղտնիքը, սակայն երբեմն պարագաները ինքնիրեն կը խօսին, և եղելութեանց կապակցութիւնը կը բացատրեն։ Եթէ Սարգիս Աջին գողութիւնը իրեն համար պատրաստած էր, պէտք էր իրեն ծանր երեւար Զաքարիայի յաջողութիւնը, իսկ եթէ Զաքարիայի ծառայութիւն մատուցանել ուզած էր, ինչ որ մենք հաւանականագոյն կը կարծենք (§ 1490), պէտք էր Զաքարիայէ արժանաւոր վարձ մը ստացած ըլլար, ինչ որ յիշատակուած չէ, և ոչ ալ բացակայութեան տանն ալ աթոռակցութեան պատիւն ու գործը Սարգսի յանձնուած է։ Երկու առիթներու մէջ ալ դիւրաւ կը հաստատուի Սարգսի և Զաքարիայի անհամաձայնութիւնը, մանաւանդ թէ Զաքարիան հեռացնելու համար Սարգսի ալ Գրիգորի միանալը, և Զաքարիայի մեկնելէն ետքը, երկրորդ աթոռակիցի մը պէտք զգացուած ատեն, Սարգիսին այդ աստիճանին կոչուիլը։ Դավրիժեցիին նշանակած 1466 թուականը, պարտաւոր չենք իբրեւ Սարգսի աթոռակցութեան սկիզբը նկատել, ինչպէս ինքն ալ յայտնապէս կը գրէ (ԴԱՎ. 335), ուստի ամենայն հաւանականութեամբ կրնանք Սարգսի աթոռակից կաթողիկոսութիւնը 1462'էն հաշուել, Զաքարիայի մեկնելէն անմիջապէս ետքը։

**ԳՐԻԳՈՐԻ ՄԱՀԸ**

**1496.** Գրիգորի վերջին տարիներուն միջոցը, նշանաւոր և կարեւոր դիպուած մը չներկայեր։ Ինքն ալ ներքին գործերով և յուզուած տագնապներով զբաղած կ'անցընէր իւր ծանրացեալ օրերը։ Գրիգորի մահը պէտք է դնել 1465 տարւոյն վերջերը, վասնզի որչափ ալ Հայոց 915 թիւին գրուած յիշատակարան մը կը նշանակէ ի հայրապետութեան տեառն Գրիգորի, ընդհանրական Հայոց կաթողիկոսի (ՓԻՐ. 226), սակայն ուրիշ մըն ալ 914 թուականով կը գրէ, ի կաթողիկոսութեան տեառն Արիստակէսի, որ յայսմ ամի նստաւ յա-

բու հայրապետութեան (ՓԻՐ. 221), ինչ որ Գրիգորի մեռնելով, աթոռակցութենէ նախագահ աթոռակալութեան անցնելուն կրնայ պատշաճիլ: Նկատելով ալ որ Հայոց 915 տարին 1465 նոյեմբեր 25'ին կը սկսէր, այն տարւոյ վերջերը դնելով Գրիգորի մահը՝ երկու յիշատակութիւններն իրարու կը մօտենան, մանաւանդ որ գրողները տեղւոյն վրայ չեն, և լուրերն ալ շատ շուտ չէին տարածուիր այն ատեններ: Գրիգոր Ջալալբէգեան կամ Մակուցի կամ Արտազեցի կաթողիկոսին գործերը հետզհետէ յառաջ բերած ատեննիս ինչինչ դիտողութիւններ ալ միատեղ յայտնեցինք: Ապիկար և ստորին անձնաւորութիւն մը եղած չէ, գոհացուցիչ գործունէութիւն և գնահատելի արդիւնքներ ալ ունեցած է, դժբախտաբար պաշտօնի բարձրանալը շատ տգեղ կերպերով կատարուեցաւ, որոնց մէջ ինքն ալ մեղադրանքէ զերծ չկրնար բռնուիլ: Այդ պարագայն իւր պաշտօնին սկզբնական տըկարութիւն մը բերաւ, որով չկրցաւ եկեղեցւոյ հիմնական շահերուն պաշտպան կանգնիլ, և պատճառ եղաւ Աղթամարի աթոռին նորէն բաժնուելուն, Կիլիկիոյ բաժանեալ աթոռին հաստատուելուն, և Էջմիածնի աթոռին բռնի գրաւուելուն: Որով հայրապետական աթոռին միահեծան վերանորոգութեան բարեգուշակ ձեռնարկը՝ իր օրով և իր պատճառով վտանգուեցաւ: Իրմէ սկսաւ նաև աթոռակից կաթողիկոսներու դրութիւնը, ուսկից եթէ մի պատահական օգուտ յառաջ եկաւ՝ յաջորդութեանց ապահովուելովը (§ 1482), շատ աւելի ծանր ու հետզհետէ աղխտաբեր եղան անոր հետևանքները, և շուրջ երկու դար վրդովեցին հայրապետական Մայրաթոռը:

**1497.** Ժամանակակից է նաև Աղթամարի կաթողիկոս Զաքարիայի մահը: Մինչև 1464 Զաքարիա յիշատակուած է (ՓԻՐ. 218, 219), եթէ հայ թուականին մէջ Գ և Դ թուատառերու փոխանակութեամբ 1465 չուզենք կարդալ, վասնզի սոյն այս 1465 տարին առաջին անգամ կը յիշատակուի Զաքարիայի յաջորդը Ստեփանոս (ՓԻՐ. 222), և 1466'ին տակաւին է հայրապետութեան Նորընծայ կաթողիկոսին տէր Ստեփանոսի կը գրուի (ՓԻՐ. 226), որով 1465'ին վերջերը պէտք կ'ըլլայ դնել Զաքարիայի ալ մահը, Գրիգորի մահուան հետ միևնոյն ատեն: Հաւաքաբանը այստեղ ալ Զաքարիայի և Ստեփանոսի մէջտեղ երկու տարի ընդհատում և չորս անծանօթ կաթողիկոսներու անուններ կը դնէ (ՕՕ ԲԻԶ. 1196), որոնք ուրիշ յիշատակարաններէ չեն ստուգուիր, և Զաքարիայի անմիջական յաջորդ կը նշանակուի Ստեփանոսը, ինչպէս որ մենք ալ կ'ընդունինք: Բայց մտադիր կը պահենք միւս տեղեկութիւնը, թէ Ստեփանոս Էջմիածնի մէջ ձեռնադրուած էր Զաքարիայէ (ՕՕ ԲԻԶ. 1195), վասնզի անշուշտ Զաքարիա այս տեսակ հանդիսութիւններ ուզած է կատարել Մայր Աթոռի մէջ: Ասկէ կը հետևի Ստեփանոսի ալ զօրաւոր դիրք ունեցած ըլլալը, որով պատճառ չմնար անշան անձերուն կաթողիկոսութեան անցնելուն: Մանաւանդ որ Լուսաւորչի Աջն ալ Ստեփանոսի ձեռքը կը գտնուէր տակաւին:

**1498.** Թէպէտև այդ ժամանակամիջոցը, որուն վրայ կը խօսինք, ընդհանուր կերպով մոլեռանդ հալածանքներու գործեր չներկայեր, սակայն երբեք չէ դադրած այն սովորութիւնը որով որևէ ամբաստանութենէ կամ զրպարտութենէ ազատուելու միջոց կը ցուցուէր ուրացութիւնը, և իրաւ կամ կեղծ կամ սուտ ուրացութենէ մը ետ դառնալը մահապարտութեան պատճառ կ'ըլլար: Այս առիթներէն ամէնքը պատմուած չեն, և ո՛վ գիտէ որչափ արի նահատակներու անուններ անյիշատակ մնացուած են, որոնց յիշատակը թաղեալ կը մնայ յայտից և անյայտից յիշատակութեան մէջ (ՑՕՆ. 259): Անուններին ծանօթներէն մէկն է Յովհաննէս Տարօնեցի, Մշոյ Ս. Կարապետի Իննակնեան վանքին եպիսկոպոսը, որուն վրայ նախանձոտ Քուրդեր զրպարտութիւն յարուցին, թէ տաճկաց դէօրէն. ձղմբէն և պարէսպ շինեաց զէկեղեցին էր (ՆՈՐ. 300): Եպիսկոպոսը Մուշի դատաւորէն ձերբակալուելով Բաղէշի ամիրապետին ղրկուեցաւ, որ առանց ուրիշ քննութեան ուրացութեան պայմանը առա-

ԶԱՔԱՐԻԱՅԻ ՄԱՀԸ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՏԱՐՕՆԵՑԻ

ջարկեց, և Յովհաննէսի մեռնելուն վրայ բռնադատութեան սանձանքներ փորձուեցան։ Նախ մերկացնելով բարձր տեղ մը հանեցին և վիզը չուան ձաղանքի ենթարկեցին, յետոյ նոյն կերպով քաղաքին մէջէն տարին փողոց մինչև բերդը, կրակ վառելով բոցերէն անցուցին, սուրով խոցեցին, և քարկոծեցին, մինչև որ հոգին աւանդեց քարերու տարափին ներքև (ՆՈՐ. 302)։ Իսկ մարմինը փառօք թաղուեցաւ Ս. Սարգիս եկեղեցւոյն մէջ, Բաղէշի արքեպիսկոպոսին ձեռքով (ՆՈՐ. 303), որ էր Յովհաննէս Թամուրենց (ՓԻՐ. 213)։ Նահատակութեան օրը կը նշանակուի, ապրիլ 19, Նոր կիրակէի երեքշաբթին (ՆՈՐ. 303), որ կը յարմարի 1463'ին, ինչպէս ունինք քանի մը ձեռագիրներ, և կը հաստատէ Մարտիրոս Պոռեցի վարդապետը (ՓԻՐ. 213), և չարգարանար ուրիշ գրչագիրի ցուցած 1473 թուականը (ՆՈՐ. 304)։

**1499.** Առանց մանրամասնութիւններ գիտնալու քանի մը ուրիշ նահատակներու ալ կը հանդիպինք, որոնց անունները կ'ուզենք յիշել անմոռաց չթողլու համար։ Այսպէս է Նախ, տէր Աստուածատուր Վանեցի, որ Նոհուտքէօյըս 1448'ին գրուած յիշատակարանի մը համեմատ (ՓԻՐ. 158), թուականը անորոշ։ Նոյնպէս Սքանդար որ է Աղեքսանդր Ասլան-Մելիքենց, որ 1465'ին վկայեալ է Վան Քրիստափոր առաքելական (ՓԻՐ. 220), տեղը անորոշ։ Նոյնպէս պարոն Լոյս, զոր Նոհուտքէօյին 1467'ին (ՍԱՄ. 175), և որուն տեղը Կաֆա ըսուած է ուրիշի կողմէ (ՓԻՐ. 227), թէպէտ դժուար է ընդունիլ, Կաֆա քաղաքին Լատիններու իշխանութեան ներքև գտնուելուն համար։ Նահատակին իշխանազուն մը ըլլալը կը քաղուի պարոն պատուանունէն, և ուղիղ չերևիր ուրիշներուն Պարոնլոյս յատուկ անուն մը կազմելը (ՓԻՐ. 227)։ Ասոնք են առ այժմ մեր հանդիպած անունները։ Նահատակներէն դուրս սովոր ենք նշանաւոր անձերու և գրողներու յիշատակներն ալ քաղել, սակայն դժբախտաբար չատ աղքատ է այդ մասին մեր պատմութեան առարկայ եղող դարը։

## Տ. ԱՐԻՍՏԱԿԷՍ Բ. ԱԹՈՌԱԿԱԼ

ՅԱՋՈՐԴԵԼՆ ՈՒ ԴԻՐՔԸ

**1500.** Հայրապետական աթոռին դատարկանալը նոր ընտրութիւն պէտք չէր ստեղծէր, զի երկու օծեալ աթոռակիցներ պատրաստ էին, և երիցագոյնն Արիստակէս նովին իսկ աթոռին տէր կը դառնար։ Նոր էր յաջորդութեան այդ ձևը, և ժողովական վճիռ մը զայն հաստատած չէր, բայց այնչափ ցրուած ու ցնցուած էր ազգին կացութիւնը, որ ոչ ոք դիտողութիւն կամ ընդդիմութիւն յարուցանելու միտք ունեցաւ, և կատարուած գործողութիւնը ամէնուն կողմէն ընդունուեցաւ ու նուիրագործուեցաւ և ապագային ալ նախընթաց եղաւ և իբր կանոն ծառայեց։ Արիստակէսի ոչ ուսումը յայտնի է և ոչ նախընթացը (§ 1481), որով ծննդավայրի կամ պաշտօնատեղւոյ մականուն չունենալուն, Աթոռակալ կոչումը, որով առաջին անգամ Գրիգորի գործակից և բարձակից ճանչցուեցաւ, իրեն վրայ իբրև մականուն մնացած է։ Գրիգորի հետ արդէն երկրորդ աթոռակից և կաթողիկոսակից կը գտնուէր Սարգիս (§ 1495), որ այժմ Արիստակէսի հետ առաջին աթոռակիցի տեղը կը ստանար, և բնաւ ակնարկ մը չունինք, որ Արիստակէս նորէն երկրորդ աթոռակից մը աւելցնել ուզած ըլլայ։ Այս է եղած հայրապետանոցի դիրքը 1466'ին, Գրիգորի մահուանէ անմիջապէս ետքը։ Խարբերդցի յիշատակագիրի մը սոյն 1466 թուին պարզապէս է Կոստանդնուպոլսոյ պատրիարք Սարգսի գրելը (ԹՈՐ. Բ. 479), մեզ չստիպեր Արիստակէսը մեռած ենթադրել, ինչպէս ոմանք կարծեցին (ՁԱՄ. Գ. 506), այլ թէ երկուքին ալ անունը հաւա-

սարապէս կը յիշատակուէր, երբեմն ի միասին և երբեմն զատ զատ։ Մեր խօսքը կը հաստատուի ուրիշ յիշատակարանով մը, որ 1468'ին կը գրէ ի հայրապետութեան Վաղարշապատու տեառն Ռափայէլի Սուրբ Էջմիածնի աստուածաշէր աթոռոյն (ԹՈՐ. Բ. 577)։ Իսկ քաղաքական կացութիւնը փոփոխութիւն չէր կրած, միայն վեհապետները փոխուեցան և 1467'ին Ճիհանշահի յաջորդեց որդին Հասան Ալի, որուն ազդեցութեամբ Ջալալբէգեանց զօրացած և Զաքարիա խոյս տուած էր (§ 1493)։ Ճիհանշահէ քիչ առաջ Ճիհանկիրն ալ մեռած և իրեն յաջորդած էր որդին Հասան, Ուզուն այսինքն Երկայնահասակ մականուանեալ, որ կրցաւ Աքքոյունլուներուն անկեալ դիրքը բարձրացնել։

**1501.** Էջմիածնի և Աղթամարի աթոռները միաժամանակ աթոռակալ փոխած էին, և Ստեփանոս իր նախորդէն ոչ նուազ ձեռ-

ՍՏԵՓԱՆՈՍ ԱՂԹԱՄԱՐՑԻ

ները, և Աջը իրեն ձեռքը ունենալուն վստահ, ուզեց նորէն փորձել Զաքարիայի անգամ մը կատարած յարձակումը, որ մոռցուած չէր, և որուն ինքն ալ գործակցած էր, և Էջմիածնի մէջ ալ եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստացած էր (§ 1497)։ Գրիգորի մահը բարեդէպ առիթ նկատեց փորձը կրկնելու, և ինչպէս Կիրակոս Ջօշկանց երէց կը գրէ, Ստեփանոս Աղթամարցին յայսմ ամի որ է 1467 տարին, գնաց յԷջմիածին և տիրեաց յամենայն Հայաստանեայց ազգի (ՓԻՐ. 229)։ Այդ եղելութենէն ետքը անմիջապէս յիշուիլը ի զօրութեան Ջհանշայի (ՓԻՐ.230), կրնայ միզ առաջնորդել, թէ Ստեփանոս յաջողեցաւ պահ մը նորէն շահիլ Ճիհանշահի պաշտպանութիւնը, որ իրեն նախորդին համանուորն ու բարերարն էր եղած, և այնպէս քաջալերուիլ իր ձեռնարկին մէջ, սակայն բախտը այս անգամ ալ նպաստաւոր չեղաւ Աղթամարցիներուն։ Վասնզի միեւնոյն միջոցին տեղի ունեցաւ Աքքոյունլուներու վեհապետին Ուզուն Հասանի յարձակումը Գարաքոյունլուներու վրայ, իր հօրը Ճիհանկիրի վրէժը լուծելու (§ 1493)։ Ուզուն Հասան զօրացաւ, և Ճիհանշահ, ոչ ինքն անձամբ որ մեռած էր, այլ որդին Հասան Ալի՝ հօրը պատուանունովը կոչուած, չկրցաւ դէմ դնել, և 1468'ի մեծ պատերազմին մէջ ինքն ալ սպաննուեցաւ, և իր ազգատոհմը գերի ինկաւ, և Աքքոյունլուներ խպառնուանեցին Գարաքոյունլուները և Ուզուն Հասան ինքնակալ տիրապետող եղաւ երկու բաժիններուն միանգամայն, Միջագետքի և Պարսկաստանի, և շէրէֆանէն ազատեց ի գերութենէն (ԹՈՐ. Բ. 377)։ Անշուշտ Ստեփանոսի պաշտպաններուն անկումը իր փորձը պարապի հանեց, և ինքն ալ իր նախորդին նման համառօտ միջոց մը Էջմիածնի և ամենայն Հայաստանեայց ազգի տիրապետելէն ետքը, պարտաւորուեցաւ խոյս տալ և Զաքարիայի փախուստը կրկնելով Աղթամար ապաւինիլ։ Հաւանական է կարծել թէ Լուսաւորչի Աջը երկրորդ անգամ մըն ալ Էջմիածին տարուեցաւ և ետ բերուեցաւ, վասնզի Ստեփանոս չէր կրնար Աջը Աղթամար թողլով Էջմիածնի տիրանալ։ Պէտք է նաև յիշենք, թէ Ճիհանկիրը հարկատուութեան համոզող Զաքարիայի յաջորդը, չէր կրնար աղէկ աչքով նկատուիլ կամ պաշտպանուիլ Ջիհանկիրի զաւակէն։ Արիստակէս անգամ մըն ալ Աղթամարցիներէ ազատելով իր հայրապետական աթոռին դարձաւ։ Ստեփանոսի ձեռնարկին մէկ նշանը կը տեսնենք նաև Հայրապետ Աղթամարցի աբեղային անցողակի ակնարկին մէջ, որ ճառընտիր մը գրած է գնեաց ի սուրբ Էջմիածինն և գնեաց յաստուածաբնակ կղզին Աղթամար (ՓԻՐ. 231), որով Ստեփանոսի հետ գացած և դարձած ըլլալը կը հաստատուի։ Եւ եթէ ճառընտիրի մը լաւմար կրցաւ նա Էջմիածնի մէջ գրել, ուրեմն միջոց մը այն տեղ մնացած էր, և ըստ այսմ Ստեփանոսը 1467'ին Էջմիածնի տիրացած և 1468'ին Էջմիածնէ փախած կրնանք դնել։

**1502.** Արիստակէս կաթողիկոսի նշանաւոր գործերուն կարգը պէտք է դասենք Լեհաստանի համար եպիսկոպոս ձեռնադրելը, որ տեղի ունեցած է 1467'ին, Ստեփանոսի

ԼԵՀԱՍՏԱՆԻ ՀԱՅԵՐ

յարձակումէն առաջ։ Լեհաստանի Հայ գաղթականութեան սկզբնաւորութիւնը կը

*բարձրանայ չորս դար առաջ մինչեւ 1065, Անիին Ալփասլանի ձեռք իյնալուն առեն (§ 869), երբ Անեցի կամ ընդհանրապէս Շիրակացի գաղթականներ Կովկասը անցնելով սկսան տարածուիլ դէպ հիւսիս, և հետզհետէ ընդարձակուեցան, ու Լեհաստանի թագաւորներուն պաշտպանութիւնը գիրենք քաջալերեց անոնց հովանւոյն ներքեւ ամփոփուիլ։ Հայերուն կեդրոնացած տեղը եղաւ գլխաւորապէս Իլվով կամ Լով քաղաքը, գերմանական հնչմամբ Լէմպէրկ և լատինական հնչմամբ Լէոպոլիս կոչուած, որ 1259'ին մեծ քաղաքներու կարգն անցաւ։ Հայերու Իլվով հաստատուելուն ճիշդ թուականը որոշել դժուար է, բայց հարկաւ հետզհետէ աճեցան և բազմացան քաղաքին առեւտրական զարգացման ընթացքով։ Առաջ քաղաքէն դուրս իրենց յատուկ թաղ և սեփական եկեղեցիներ ունեցած են (ԲԺՇ. 97), և միայն 1173'ին քաղաքին մէջ փայտաշէն փոքրիկ եկեղեցի մը արտօնուած են շինել, որուն տեղը 1363'ին քարաշէն մեծ եկեղեցի մը կառուցած են Յակոբ Շահնշահեան Կաֆացի և Փանոս Ավրանեան Ղազալցի, որոնք կը վկայեն թէ շինած են* հայոց տաան ատրք Լուսաւորչին օրէնօին, Հնազանդ խոճաղեքէին, *այսինքն հայրապետութեան Ամենայն Հայոց*, և Հայ եղէ·յօղօւէ (ԲԺՇ. 104)։ *Իլվովի եպիսկոպոսներուն առաջինը եւս այդ թուականին կը յիշուի, Թագաւորազուն Յովհաննէս մը Մեսրոպ Արտազեցիէ ձեռնադրուած 1365'ին, թէպէտ ոմանք 1364'ին ձեռնադրուած Գրիգոր մըն ալ կը յիշեն* (ԲԺՇ. 106)։ *Բայց յաջորդներուն մասին յիշատակներ կը պակսին, մինչեւ Խաչատուր եպիսկոպոսը, որ 1467'ին պաշտօնի կ'անցնի, Արիստակէսէ ձեռնադրուած* (ԲԺՇ. 110)։ *Նոյն միջոցին Լեհաստան կը գտնուին երկու նուիրակներ, Անանիա արքեպիսկոպոս և Թովմաս եպիսկոպոս, որոնց ղրկող աթոռները յիշուած չեն։ Ասոնց հետ ժողով մը կը գումարուի.* Ժնաաաանխօ որ է ընդդեմ ժողովքօ (ԲԺՇ. 110), *որ անշուշտ Հաճկատար Աստուածածին վանքն է* (ԲԺՇ. 98), *և ուր զանազան կարգադրութիւններ եղած են եպիսկոպոսարանի գործունէութեան և և եպիսկոպոսին ձեռնհասութեան վրայ։*

*Այդ արձանագրութենէն կը քաղուի, որ* տանուտէրոց *մարմին մը կայ քաղաքին մէջ հաստատուած, տեսակ մը վարչական ժողով մը, և Խաչատուր եպիսկոպոս կը խոստանայ,* առաջի Աստուծոյ, որ առանց տանուտէրոց հրամանքն, 1. Եկեղեցեաց և անոնց ընչից մասին հրաման չտայ։ 2. Քահանայից մօտն յետամուտ ըլլի։ 3. Երէցանուն չտան ու չտապարանն է տեղը ընէ և այլ տեղ չյենէ։ 4. Զ+ահանայ և ղարկաւոր *չձեռնադրէ*։ 5. Անհասակ խնամութեան կամ այլ անհաս բան կաշառօք չընէ։ 6. Ինչ որ խաչեանց կարեացն հոգոյ բաժին կամ հանեն տան, *զայն առնէ*, և առէլ *չպահանջէ*։ 7. *Ինքնին* եկեղեցւոյն և հայրապետ չդնէ։ 8. Ինչ բան որ լինայ կամ տատրան, հոգեւոր կամ մարմնաւոր, առանց տանուտէրոց չընէ։ *Ի վերջոյ նկատելով որ թերեւս կաթողիկոսին կողմէն տարբեր կարգադրութիւն կարենայ ըլլալ, եպիսկոպոսը իր վրայ կ'առնէ պատշաճը գործադրել, և կը յայտարարէ որ եթէ* խոճաղեքեան տէր Արիստակէսն վէրան հրաման այնէ և ալով ժողով տէրանի այնէ, ճըռալ են դադար-խան տամ խոճաղեքեան Աստուծով (ԲԺՇ. 110)։ *Այդ դրութիւնը հետեւանք էր այն ազատութեան զոր Կազիմիր Գ Մեծն, Լեհաց թագաւորը տուած էր Իլվովցիներուն 1356'ին, և անկէ առաջ Կամենիցցիներուն 1344'ին, ազատ քաղաքի իրաւունքներ վայելել, և սեփական ֆոյթ կամ իշխանապետ և տասներկու դատաւորներ ունենալ, թէ քաղաքային և թէ դատական գործերը վարելու համար։ Ասոնք են որ հայերէն կոչմամբ* Տանուտէրոց *ժողով կը կոչուէին* (ԲԺՇ. 116), *և որոնց հրամաններուն համակերպիլ կը խոստանայ Խաչատուր եպիսկոպոսը։ Հարկաւ նախընթացաբար տեղի ունեցած անհամաձայնութիւնները խափանելու համար հաստատուած է այդ պայմանագրութիւնը։*

**1503**. *Արիստակէսի կաթողիկոսութեան տեւողութիւնը և մահուան թուականը*

ԱՐԻՍՏԱԿԷՍԻ ՄԱՀԸ

*ստոյգ կերպով գրուած չըլլալուն կը պարտաւորուինք զանազան տեղեկութիւնները համեմատելով եզրակացութեան յանգիլ։ Դավրիժեցին 1466'էն մինչեւ 1474 յիշատակութիւններ*

չունի, որով Արիստակէսի մասին որոշ բան մը չենք կրնար քաղել (ԴԱՎ. 337)։ Երեւանեցին 1466'ին կը գրէ. յետ Զաքարիայէ Տէր Սարգիս (ՋԱՄ. 20), Արիստակէսը բոլորովին զանց կ'ընէ, մինչ մենք անոր անունը յիշատակուած ունինք մինչեւ 1467 (§ 1502), և նոյնիսկ մինչեւ 1468 (§ 1501), որով Ջամչեան ալ չարդարանար 1466'ին մեռած ըսելով Արիստակէսը (ՋԱՄ. Գ. 506)։ Աւելցնենք և Ամիրտոլվաթ Ամասիացի բժշկապետին յիշատակարանը, որ իր թարգմանութիւնը 1469 դեկտեմբեր 26'ին աւարտելով, է կաթողիկոսութեան տէր Արիստակէսի կը գրէ. (ՓԻՐ. 224)։ Եթէ Փիրղալէմեանի հաւաքած յիշատակարաններուն հրատարակութիւնը այս միջոցին փակուած չըլլար (ՓԻՐ. 232), կամ եթէ նորա ձեռագիրները տրամադրելի գտնուէին, պիտի կարենայինք շատ տեղեկութիւններ քաղել անոնցմէ, ինչպէս օգտուեցանք վերջին կէս տարու միջոցին համար։ Առ այժմ կը պարտաւորուինք 1469'էն անդին չյետաձգել Արիստակէսի կեանքը, և սոյն տարին մեռած ըսել, ենթադրելով ալ որ դեկտեմբեր 25'ին կրնար գոյժը տակաւին Փիլիպէ քաղաքը հասած չըլլալ։ Արիստակէսի յիշատակին եթէ գովութեան խօսք'ը և արդիւնաւորութեան փաստեր պիտի չկարենանք աւելցնել, մեղադրութեան և դորովանքի դիտողութիւններն ալ գրելու պատճառ չունինք։ Առաջ իբրեւ Ջալալբէգեանցի աթոռակից. և վերջէն իբրեւ անոր յաջորդ շարունակ տագնապալից օրեր անցուց, և եթէ մեծ արդիւնք մը յառաջ չբերաւ, գոնէ կրցաւ եղածը պահպանել, և Մայրաթոռի դիրքը պաշտպանել, և Զաքարիա ու Ստեփանոս Աղթամարցիներու ոտնձգութեանց դէմ դնել։ Իրաւ Հասան Ալիի ձգտումները և Ուզուն Հասանի յաջողութիւնները իրեն նպաստեցին, բայց գովելի արդիւնաւորութիւն մըն է առիթները օգտուիլ գիտնալն ալ։

# Տ. ՍԱՐԳԻՍ Բ. ԱՋԱՏԱՐ

**ՍԱՐԳԻՍ ԵՒ ՕԾՈՂԵՑԻՆ**

**1504.** Յաջորդութեան գործը աթոռակցութեան իրաւունքով կարգադրելու կերպը, կրկին իր իրագործումը ունեցաւ Արիստակէսի մահուանէ ետքը, քանի որ արդէն Ջալալբէգեանցի օրէն երկրորդ աթոռակից հռչակուած էր Սարգիս (§ 1495), և Արիստակէսի հետ ալ շարունակած էր իբրեւ առաջին աթոռակից։ Իր գործերէն ինչ ինչ պատմեցինք (§ 1490), և աթոռակցութեան բարձրանալն ալ բացատրեցինք (§ 1495), բայց իր ուսկից ըլլալը և անկէ առաջ ինչ նախընթաց ունեցած ըլլալը չենք գիտեր, և որոշ մակդիր անունն ալ չենք գտներ։ Մենք զինքը ճանչցանք Լուսաւորիչի Աջը Էջմիածին տանելուն առթիւ, և այդ պարագայէն կազմած ենք Աջատար մականունը, համանուններէ զատելու համար, աւելի տեղեկ կոչում մը խնայելով, զի անուրանալի է թէ յայտնի գողութիւն մըն էր Սարգիսի բաժինը։ Այդ գործը բաւական է աննպաստ գաղափար մը կազմել տալու համար իր վրայ, իբր անձնական շահի զակատեալ անձ մը, օրինաւորութեանց պայմաններն ալ ոտնակոխ ընելու չափ։ Իր գործին ներքին նշանակութիւնը շատ աւելի մեծ եղած է քան արտաքին եղելութիւնը, Մայրաթոռի պատուազրկումին դուռ բանալով և Աղթամարցոց յարձակումներուն քաջալերութիւն տալով։ Որչափ ալ Սարգիս վերջէն Զաքարիայէն բաժնուած և օրինաւոր կաթողիկոսներու կողմը զօրացնելու օգնած ըլլայ, բայց հարկաւ ինքզինք մեղադրելու չափ ցաւած պիտի ըլլայ, երբ կարգը իրեն հասաւ Մայրաթոռի գահակալն ըլլալու, առանց Լուսաւորիչի Աջը իր ձեռքը ունենալու։ Անշուշտ ամէն տեսակ ծրագիրներ և ամէն տեսակ միջոցներ Սարգիսին միտքէն անցան, գուցէ քանիներ ալ փորձեց, բայց յայտնի ու բռնի կերպեր բնաւ վստահութիւն չներշնչեցին,

և հարկ եղաւ գաղտնի ու նենգամիտ միջոցներու դիմել, ինչ որ հնար չէր ձանձունել և հրապարակել: Սարգիսի նպատակին օգնելու յարմար անձ մը ներկայացաւ էջմիածնի եպիսկոպոսներէն Վրթանէս, ընիկ Օծոպեցի, Շահպանուցձոր կամ Շահապօնք գաւառէն ու Սիւնիք նահանգէն, այր խորագէտ և խելամուտ ի գործս խոր և ճարտարաբան ի խօսս, որ Սարգիսի հետ խորհրդով և կամօք համաձայնելէ ետքը (ԴԱՎ. 329), յանձնառու եղաւ, գաղտնի ձեռնարկը գլուխ հանել: Վրթանէս էջմիածինէ հեռացաւ առանց երթալիք տեղը իմացնելու, և առանձնացաւ յանծանօթ աշխարհ, առանց իւր ով ըլլալը յայտնելու: Անդ այլափոխեաց զանուանն և զզգեստն, և հարթեալ թեթեւացոյց զմօրուսն, և եղեւ ի կերպ մուղդուսոյ՝ անգէտ գրոց և կարդալոյ: Ինքզինքը աւելի ծածկելու համար, ի վերայ տան զծառանն կողեաց զարանա զբարձն, և կողոցոյց զլեզն, և եղաւ կատարելապէս մղտեսի մը, ինչպէս սովոր էին կոչուիլ վանքերու մէջ գտնուող խեղճ աղօթաւորներ և ուխտաւոր ծառայողներ: Այս կերպարանի ներքեւ ներկայացաւ Վրթանէս Աղթամարի վանքը, չենք գիտեր ինչ անուանի ներքեւ, և ընդունուեցաւ Աղթամարի կաթողիկէին ստորին ծառայութեանց մէջ (ԴԱՎ. 330): Վրթանէսի նպատակն էր այս կերպով իմանալ Աջին պահուած տեղը, անոր տիրանալու միջոցները ճարել, և գաղտնի կերպով զայն վերցնել, ինչպէս Սարգիս յաջողած էր ընել էջմիածնի մէջ (§ 1490), և հիմակ նոյն կերպը թելադրած էր Վրթանէսի: Բայց Սարգիս մխիթարութիւն չունեցաւ իւր հնարքին ելքը տեսնել, զի Վրթանէս հազիւ յամս եօթն կրցաւ յաջողցնել իւր նպատակը (ԴԱՎ. 330), երբ Սարգիս արդէն մեռած էր.

**1505.** Սարգիս տարիքը առած և յուզմունքներով ատեն անցուցած, բաւական տկարացած էր երբ աթոռին տէր եղաւ իբրեւ բուն աթոռակալ, և իրմէ զատ աթոռակից ալ չէր մնացած, զի Արիստակէս չէր ուզած նոր մը բարձրացնել այդ աստիճանին: Ուստի Սարգիս հարկ տեսաւ իրեն աթոռակից մը օծել, և այդ աստիճանին բարձրացաւ Յովհաննէս եպիսկոպոս մը, որով Սարգիսի հետ այլեւ եղեւ կաթողիկոս տէր Յովհաննէս: Այս ընտրութիւնը Դավրիժեցին կը դնէ 1474 թուականին ներքեւ (ԴԱՎ. 337), սակայն ատկէ կը հետեւի միայն նոյն թուականին արդէն եղած ըլլալը, և ոչ թէ նոյն տարին օծուիլը, ինչպէս Դավրիժեցին ալ զգացուցած է (ԴԱՎ. 334), և յայտնապէս ալ Վրթանէս Օծոպեցիին ձեռնարկը պատմած ատեն (§ 1504), ըսուած է թէ արար խորհրդով և կամօք կաթողիկոսացն, որոց անուանքն են Սարգիս և Յովհաննէս (ԴԱՎ. 330): Արդ քանի որ Վրթանէսի ձեռնարկը կանուխէն եղած բան մըն էր, Յովհաննէսի աթոռակցութիւնն ալ պէտք է Սարգիսի միահեծան կաթողիկոսութեան սկիզբը դնել 1470'ին: Երեւանեցին ալ 1475 թուականը յիշած ատեն (ՋԱՄ. 20), պարզապէս Դավրիժեցին կ'օրինակէ Գ և Դ թուատառերուն ալ չփոթութեամբ ընդօրինակութեան կամ տպագրութեան մէջ, և հետեւաբար նոր հեղինակութիւն չկազմեր: Զամչեան համանուն Սարգիսներու և Յովհաննէսներու յիշատակութեանէն չփոթելով, չէ ուզած Յովհաննէսը աթոռակից կաթողիկոս ճանչնալ, հակառակ Դավրիժեցիին յստակ վկայութեան, և նոր ձեւ մը տուած է Սարգիսի կատարած ընտրութեան, թէ կարգեաց իւր փոխանորդ զՅովհաննէս վարդապետ, ձեռնադրեալ զնա եպիսկոպոս Էջմիածնի (ՋԱՄ. Գ. 506), կոչում մը՝ որուն ոչ ուրեք կը հանդիպինք: Սարգիսի բուն կաթողիկոսութեան ժամանակէն ըսաւ եղելութիւն մը չենք գտներ, զոր կարենանք իբր իւր գործունէութեան պատմութիւն յառաջ բերել: Անգործ անցուցած է նա իւր հայրապետութեան տարիները որ երկար ալ չեն եղած, և կը համեմատին Ուզուն Հասանի պատերազմներու միջոցին: Դավրիժեցին 1476 թուականէն կը դադրեցնէ Սարգիսի անունը, և առաջին կը դնէ Յովհաննէսը (ԴԱՎ. 337), որով կ'իմացնէ թէ այդ թուականին Սարգիս արդէն մեռած էր: Միւս կողմանէ օտար աղբիւրէ մը, ինչպէս Իտալիոյ Գենուա քաղաքի հին գրութեանց դիւանը, կը քաղուի թէ 1474'ին Հայոց կաթողիկոս մը մեռած է, զոր ուրիշներ Արիստակէսի ուզած են պատշաճեցնել (ԱՐՐ. 230), բայց

ԱԹՈՌԱԿԻՑՆ ՈՒ ՄԱՀԸ

մենք յարմարագոյն կը գտնենք Սարգիսի վրայ իմանալ, քանի որ 1474'էն առաջ հաստատեցինք Արիստակէսի մահը (§ 1503)։ Այս տեսութեամբ Սարգիս Բ Աջատար իւր կեանքը կնքած կ'ըլլայ 1474'ին, 4 տարի և քիչ մը աւելի վարելով բուն աթոռակալ հայրապետութիւնը, որուն աթոռակիցը եղած էր 1462'էն իվեր (§ 1495) երկու նախորդներուն հետ։ Իւր վրայ գիտցուած տեղեկութիւններ տգեղ գոյներ միայն ցոյց կու տան, իսկ ուր այդ յիշատակները կը պակսին՝ անգործ դատարկութիւն մըն է տիրածը, և ինքը առաջին կը գտնուի այն շարքին մէջ, որոց համար Երևանեցին կը գրէ, թէ [illegible] (ՋԱՄ. 19)։

1506. Երուսաղէմի աթոռին վերաբերեալ գործերէն գրեթէ բոլորը սրբավայրերու տիրապետութեան խնդիրներ են, քրիստոնէից զանազան բաժիններուն իրարու դէմ վարած պայքարներով, ուսկից օգուտ կը քաղէին Եգիպտոսի պետական շրջանակները, և նոյնիսկ սուլտանները, անձնական շահերու առիթներ պատրաստելով։

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ

Վերջին անգամ յիշեցինք Գողգոթայի սրբավայրին համար Վրացիներու և Հայերու մէջ մղուած խնդիրը (§ 1425), որուն համար Մարտիրոս պատրիարք Եգիպտոս գնաց, իսկ Եսայի աթոռակիցը, որ Կոստանդնուպոլիս կը գտնուէր (§ 1435), Երուսաղէմ դարձաւ տեղական վարչութեան գլուխը գտնուելու համար։ Գողգոթայի Հայերուն ձեռք անցնիլը տեւական չեղաւ, զի Վրաց թագաւորը կրցաւ կրկին յագեցնել և հաճեցնել Ապուսայիտ Ջաքմաք սուլտանը, և այս անգամ անհնար եղաւ Մարտիրոսի Վրացւոց դէմ մրցիլ. թէպէտ կրկին Եգիպտոս գնաց։ Ուստի գոհացաւ Հայ սեփականութիւն դարձնել վերնատունն որ այժմ ալ Հայոց ձեռք կը գտնուի, և [illegible], ուր ժամանակաւ յիշատակարան ալ կը գտնուի եղեր (ՀՆՆ. 227), 1439 թուականով (ԱՍՏ. Ա. 229)։ Շատ չտեւեց Վրացւոց յաղթութիւնը, վասնզի թագաւորութիւննին վերջացաւ 1440ին (§ 1429), և իրենց բաժինը [illegible] Ցոյնոց, և Վրացւոց անունը ջնջուեցաւ սուրբ տեղեաց մէջ։ Իսկ Հայերէ գրաւուած Գողգոթային կէսն ալ [illegible] Ցունաց (ՀՆՆ. 227)։ Այս միջոցիս չարունակ ստնձգութեանց պատմութիւններ են որք յառաջ կը բերուին, և որոց հետեւիլ մեր նպատակէն դուրս է։ Միայն յիշենք թէ ոչ միայն քրիստոնեայք իրարու դէմ, այլ և մահմետականք քրիստոնէից դէմ սեփականութեանց խնդիրներ կը մղէին, և եկեղեցիներ կը քանդէին կամ մզկիթի կը փոխարկէին, իբր այն թէ կանուխէն իսլամական աղօթատեղիներ եղած ըլլան։ Այս կարգին նշանաւոր է Դաւիթի գերեզմանին գրաւումը 1468'ին (ԱՍՏ. Ա. 239), և նոյնիսկ Ս. Յարութիւն տաճարին քրիստոնէից առջև փակուիլը 1496'ին, որ դադրեցաւ Եթովպացւոց թագաւորին Երուսաղէմ այցելելուն առթիւ 1480'ին (ԱՍՏ. Ա. 238)։ Հայեր շատ նեղութիւններ կրեցին այդ պատճառներով, և նոյնիսկ Ս. Յակոբեանց վանքին սեփականութիւնը պաշտպանելու պարտաւորուեցան, և անիրաւ տուրքերու դէմ մաքառեցան։ Եսայի որ Մարտիրոսի աթոռակիցն էր, անկէ ետքը շատ չապրեցաւ և հինգ պատրիարքներ յաջորդեցին մինչև Յովհաննէս Թաւիլ, որ բուն աթոռակալ եղաւ 1479'ին (ԲԱՌ. 50)։ Պէտք է յիշենք որ Երուսաղէմի յաջորդութիւնն ալ աթոռակցութեան ձեւով կը կատարուէր, ինչպէս Էջմիածնի համար տեսանք (§ 1482)։ Երուսաղէմի համար ուրիշ պարագայ մըն ալ կար աթոռակցութեան հարկը ստեղծող. վասնզի սրբավայրերն ալ անհատականութեան ձեւը կը կրէին պատրիարքներու անունով, և աթոռակցութիւնը իսլամական դատարանին հաստատել տալով, սեփականութիւնը կորսնցնելու վտանգին առջեւը կ'առնուէր, որ կրնար տեղի ունենալ, պատրիարքներու անժառանգ այսինքն անզաւակ մեռնելովը։

# Տ· ՅՈՎՀԱՆՆԷՍ Է· ԱՋԱԿԻՐ

**ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ԻՆՔՆՈՒԹԻՒՆԸ**

**1507**· *Յովհաննէս կաթողիկոսի անունը կը պակսի սովորական ցուցակներու մէջ, որք կազմուած են Ջամչեանի հետեւողութեամբ, և որ չփոթմամբ անոր անունը կաթողիկոսներու չարքէն դուրս հանած է* (§ 1505) *հակառակ Դավրիժեցիին յայտնի վկայութեան, որ* 1476 *թուականին ներքեւ առաջին կը յիշէ,* նոյն տէր Յովհաննէս, *իբրեւ բուն կաթողիկոս* (ԴԱՆ· 337)· *Ջամչեանի չփոթութեան հիմ եղած է համանունները նոյնացնելու միտքը· իբր զի Յովհաննէսի հետ Սարգիս մը գտնուած է չարունակ· և ինքն ալ Կիլիկիոյ Յովհաննէս կաթողիկոսներուն հետ նոյն անունը ունեցած է* (ՋԱՄ· Գ· 507)։ *Սակայն Յովհաննէսի հետ եղող Սարգիսներ երկու են, մէկը զինք աթոռակից առած է* (§ 1505), *իսկ միւսը ինքն Յովհաննէս իրեն աթոռակից ընտրած է, և այս երկրորդը չատ յստակ կերպով կը զատէ Դավրիժեցին գրելով,* այլ և եղեւ կաթողիկոս միւս այլ տէր Սարգիս (ԴԱՎ· 337)։ *Կ'երեւի Ջամչեանին աչքէն վրիպեր է* միւս այլ *խօսքը· որ Սարգիսները միացուցած է, և երկուքին մէջտեղ ուրիչ կաթողիկոս մը դնել աւելորդ սեպած է։ Իրեն հետեւած է սովորական ցուցակն ալ, ուր Սարգիս Բ'ի յաջորդ կը դրուի Արիստակէս Գ· և միջանկեալ երկու կաթողիկոսներ Յովհաննէսը և միւս Սարգիսը զանց եղած են* (ԺԱՄ· 635)։ *Երեւանեցին առաջինը եղած է զանցառութիւնը ուղղելու մէջ, գրելով,* տէր Յովհաննէս ի ՋԻԴ թուականին (ՋԱՄ· 20), *և նորեր ալ Յովհաննէս Ը մը* (ԱՐՐ· 230· ՋԱՄ· Բ· 8) *ընդունած են ցանկին մէջ, զոր մենք Յովհաննէս Է գրեցինք· որովհետեւ կանուխէն յայտնած ենք թէ հնար չէ Հայոց կաթողիկոսներուն չարքին և թուահամարին մէջ ընդունիլ Յովհաննէս Բազարանցի հակաթոռը* (§ 389), *զոր սովորական ցուցակը չարունակած է իբր Յովհաննէս Գ· արձանագրել* (ԺԱՄ· 621), *սակայն ժամանակակիցներ վկայած են թէ* նա ոչ համարեցաւ ի թիւ հայրապետացն Հայոց (ՈՒԽ· Բ· 63)։ *Այս պատճառով մենք Օձնեցին՝ Երրորդ գրեցինք* (§ 558), *Ովայեցին Չորրորդ* (§ 637), *Դրասխանակերտացին Հինգերորդ* (§ 699), *և Սսեցին Վեցերորդ* (§ 1072)· *որով սոյն Յովհաննէսն ալ կ'ըլլայ Եօթներորդ։ Այդ թուահամարը մեզ չստիպեր յաջորդ Յովհաննէսին կոչումը այլայլել· զի Կարբեցին, որ 1831ին կաթողիկոսացաւ, առաջին անգամ ըլլալով սկսաւ թուահամարով ստորագրել* Յովհաննէս Ը· *և պատշաճ չէինք դատեր պաշտօնական ստորագրութիւն մը փոփոխել, որչափ ալ սովորական ցուցակին սխալ թուահամարին հետեւանքը եղած ըլլայ։ Յովհաննէսի աթոռակցութիւնը* 1470 *թուականին և բուն աթոռակալութիւնը* 1474'*ին դրած ենք արդէն, պարտուպատշաճ բացատրութիւններն ալ տալով*(§ 1505)։

**Կ· ՊՈԼՍՈՅ ՀԱՅԵՐ**

**1508**· *Վերեւ յիշեցինք, թէ Աքքօյունլուներու վեհապետը Ուզուն Հասան, Գարագօյունլուներուն վրայ զօրանալով իւր իշխանութեան ներքեւ միացուց երկու պետութիւնները* (§ 1501)։ *Ուզուն Հասան իւր ստացած յաջողութիւններով փքացած, դէպ Արեւմուտք ալ ընդարձակուելու միտքը ունեցաւ, և 1471'ին Եուսուֆ զօրավարը յղեց դէպ ի Փոքր-Ասիա, որ Եւդոկիան առաւ Օսմանցիներուն ձեռքէն, և Իկոնիոնի և Ատանայի գաւառները արշաւեց, այլ Օսմանեանք իրենց ոյժերը ամփոփելով կրցան վերջէն Եուսուֆի բանակը վանել, և զինքն ձերբակալել Մուսթաֆա արքայորդւոյն հրամանատարութեամբ։ Յաթին այդչափով ալ չգոհացաւ, և 1473'ին ինքն անձամբ նոր արշաւանք մը կազմակերպեց Ուզուն Հասանի դէմ, և բազմաթիւ ճակատամարտներով անոր զօրութիւնը խորտակեց, մաս մը գաւառներ գրաւեց և Ուզունը փախուստի ստիպեց։ Այդ յաղթութիւններով աւելի եւս ընդարձակուեցաւ Օսմանեան տիրապետութիւնը Հայ ազգին վրայ, և աւելի բազմացան մայրաքաղաքի Հայերը, որ Յա-*

թիւի յատուկ պաշտպանութեան առարկայ էին, իբրեւ իր կայսրութեան բարեացակամ եւ չինարար մեծ տարրը։ Այդ եղելութիւնները տեղի ունեցան Սարգիս Աջատարի օրերը, տագնապի մատնելով էջմիածինն ալ, որ Ուզուն Հասանի իշխանութեան ներքեւ անցած էր (§ 1505)։ Փոքր-Ասիոյ յաղթութիւններէն ետքը Ֆաթիհ իր աշխարհակալութիւնը շարունակեց Սեւ ծովի հիւսիսային կողմերը, եւ 1475'ին Կաֆան ալ առաւ Ճենուացւոց ձեռքէն, եւ անկէ ալ Հայ գաղթականութիւն մը փոխադրեց իր մայրաքաղաքը։ Կաֆայի անունը զօրաւոր փաստ մըն է Հռոմէականներու ձեռքը. բոլոր անկէ եկողները Հռոմէադաւան ենթադրելու, եւ անով իրենց դաւանակիցներուն թիւը աւելցնելու. սակայն Կաֆացի հայաբնակութիւնը, Ունիթոր մասէն զատ հայադաւան մեծ մաս մըն ալ ունէր, եւ քաղաքին մէջ երկու Հայ եպիսկոպոսներ եղած, եւ մէջերնին վէճեր մղուած ըլլալուն յիշատակութիւնը (ԱՐԲ. 230) բաւական է ցրելու անոնց ենթադրութիւնը։ Չենք կարծեր որ կարենան ըսել, թէ Ֆաթիհ ընտրովի միայն հռոմէադաւանները բերած էր իր մայրաքաղաքը, մանաւանդ որ անոր համակրութիւնը վաստկուած էր իրեն բարեկամ հայադաւաններուն, եւ ոչ թէ թշնամի Ճենուացւոց բարեկամ հռոմէադաւաններուն։ Ս. Նիկողայոս եկեղեցիի մը անունն ալ փաստ մը չընծայեր Կաֆայէ միայն հռոմէադաւաններ եկած ըլլալնուն. զի Լատիններու Ս. Նիկողայոսէն զատ, հայադաւաններուն ալ նոյն անունով եկեղեցի մը ունեցած ըլլալը հաստատուած է։ Ուստի միայն Կոստանդնուպոլսոյ հայաբնակութեան՝ ոչ թէ հռոմէադաւան եղած, այլ միայն անոր մէջ հռոմէադաւան մաս մըն ալ գտնուած ըլլալը կրնայ ընդունուիլ։ Հայեր արդէն իրենց յատուկ եւ օրինական դիրք մը կազմած էին Յովակիմ եպիսկոպոսի պատրիարքական անուն եւ իրաւունք ստանալովը (§ 1481), մինչ ոչ մէկ յատուկ գոյութեան կամ կացութեան յիշատակ չգտնուիր հռոմէադաւաններուն համար։ Անոնք ապա կրնային ըլլալ իրենց ներքին համակրութեան կամ համոզման մէջ՝ լատինասէր կամ լատինամէտ կամ լատինամոլ ըլլալ, բայց համահաւասար կերպով մաս կը կազմէին միակ համազգութեան, ոչ առանձին ստացութիւն կամ հաստատութիւն կամ եկեղեցի ունէին, եւ ոչ ալ ունենալ կրնային։ Մայրաքաղաքին Հայ եկեղեցիներու թիւը որոշակի ճշդուած չենք գտներ այդ առաջին միջոցին մէջ, այլ հետզհետէ յիշատակուած կը գտնենք Ս. Սարգիս, Ս. Լուսաւորիչ, Ս. Նիկողայոս, Ս. Աստուածածին, Ս. Գէորգ եկեղեցիները (10. ՕՐՄ. 50)։ Սակայն Ալթը ճէմաաթ, կամ Վեց հասարակութիւն անունը, որով կոչուած են Կոստանդնուպոլսոյ Հայերը առաջին հրովարտակներու մէջ, գոնէ վեց սկզբնական եկեղեցիներու գոյութիւնը կը պահանջէ, զի նոյն իսկ տաճկական ըմբռնումի մէջ, ամէն հասարակութիւն կամ ժողովուրդ կամ թաղ՝ իր աղօթատեղիով կը ստանար իր ուրոյն կազմութեան հիմը։

### Կ. ՊՈԼՍՈՅ ՊԱՏՐԻԱՐՔՆԵՐ

**1509.** Կոստանդնուպոլսոյ հայաբնակութիւնը կամ լաւ եւս Օսմանեան հպատակ Հայութիւնը, իր յատուկ պատմագիրը չէ ունեցած, որ որոշակի ցուցնէր մեզի՝ անոր առաջին ժամանակներուն հանգամանքները, եւ ստիպուած ենք կցկտուր ակնարկներով կազմել անոր նախնական պատմութիւնը, մինչեւ որ հասնինք այն ժամանակներուն, ուր գլխաւոր դիրք եւ կարեւորութիւն ստացաւ ընդհանուր Հայութեան հանդէպ։ Կոստանդնուպոլսոյ Հայ գաղթականներուն սկզբնաւորութիւնը մինչեւ 1453 հոկտեմբեր 28 կը բարձրանայ (ՏԱՇ. 895), որ է ըսել առումէն միայն հինգ ամիս ետքը (§ 1476), ուսկից յետոյ շարունակաբար աճած է մինչեւ Յովակիմի պատրիարքութիւնը 1461'ին (§ 1488), ինչ որ աւելի զարկ տուած է Հայերուն բազմանալուն եւ ազդեցիկ դիրք կազմելուն։ Յիշեցինք Կաֆայի գաղութը 1475'ին, անկէ ետքը նշանաւոր եղած է նաեւ Գարամանի գաղութը 1479'ին, որուն յատկացուած է Սամաթիա թաղը քաղաքին հարաւարեւմտեան ծովեզերեայ անկիւնը, ուր եղած է նաեւ առաջին պատրիարքարանը, թէ ոչ Յովակիմի առաջին օրէն, գոնէ քիչ ետքը։ Գարամանի գաղութէն առաջ վախճանած է Յովակիմ, բաւական երկար եւ արդիւնաւոր առաջնորդութիւն վարած

ըլլալով Օսմանեան հպատակ Հայերուն վը-
րայ ի Կուտինա, ի Պրուսա, ի Ֆիլիպէ, և
վերջէն ի Կոստանդնուպոլիս, մօտ 20 տա-
րի։ Դժուար է որոշակի ճշդել Յովակիմի
մահուան թուականը որ մինչեւ 1474 կը
յիշուի (§ 1487), իսկ Ամիրտովլաթ բժշկա-
պետ 1478'ին կը գրէ յեպիսկոպոսութեան տէր
Նիկողայոսի մայրաքաղաքէն Կոստանդնուպօլսի
(ՏԱՇ. 198), և երկու թուականներուն մէջ
կը մնայ Նիկողայոսի յաջորդելը, և հաւա-
նականագոյն է վերջին թուականին մօտիկ,
1477'ին դնել անոր պատրիարքութիւնը։
Ոմանք կ'ուզեն նոյնացնել զայն 1486'ին
Անկիւրիոյ Կարմիր վանքը նորոգող Նիկո-
ղայոս եպիսկոպոսին հետ, սակայն ենթա-
դրելի չերեւիր, որ Կոստանդնուպոլսոյ աթո-
ռը բարձրանալէն ետքը իբր Անկիւրիոյ ե-
պիսկոպոս յիշուէր, բայց եթէ ըսելով, որ
Անկիւրիա իւր նախկին տեղն էր, որուն
խնամք կը տանէր Կոստանդնուպոլիս փո-
խադրուելէ ետքն ալ։ Այդ մեկնութեան կը
նպաստէ դիտելը, թէ այդ միջոցին տակա-
ւին որոշ և զատուած վիճակներ չէին կազ-
մուած Օսմանեան կայսրութեան գաւառ-
ներուն մէջ, և Կոստանդնուպոլիս նստող
պատրիարքներ, ընդհանուր թեմակալ կը
նկատուէին բոլոր կայսրութեան մէջ, և
եպիսկոպոսներ և վարդապետներ, որոնք
սատեանդ վանքերու կամ քաղաքներու
մէջ կը մնային, իբրեւ պատրիարքին փո-
խանորդներ կը նկատուէին, և ոչ իբր ի-
նքնական թեմակալներ (09 ԹԷՈ. 210)։ Մեր
տեսութեամբ այդ դրութեան հետեւանք
պէտք է նկատել Մուրախխաս կոչումը, որով
այսօր ալ Օսմանեան կառավարութիւնը կը
ճանչնայ հայ թեմակալ առաջնորդները,
մինչ բառին իմաստը պարզապէս արտօնեալ
կամ արտօնատար կը հնչէ, և չտար սեփա-
կան պաշտօն կամ իրաւասութիւն վարող
թեմակալի գաղափարը։ Իբրեւ եկեղեցա-
կան յարաբերութեան կէտրոն, հաւանա-
կանագոյն դատեցինք ընդունիլ, թէ Կոս-
տանդնուպոլիս Սսոյ հետ կապուած էր
(§ 1487), սակայն Կոստանդնուպոլսոյ դիր-
քին հետզհետէ բարձրանալն ու զօրանալը,
և Էջմիածինի սահմաններէն, զոր օրինակ
Կաֆայէն եկող գաղթականները, և Մայրա-
թառի հպատակ վիճակներուն Օսմանեան
պետութեան ներքեւ անցնիլը, բնական
կերպով Մայրաթոռի հետ ալ յարաբերու-
թիւն ունենալու դուռ բացին, որով անըզ-
գալի եղանակաւ հետզհետէ տկարացան
Կիլիկիոյ յարաբերութիւնները և զօրացան
Էջմիածինի հետ կապակցութիւնները, մին-
չեւ որ վերջնականապէս առաջինները խըզ-
ուեցան, և երկրորդներուն տեղի տուին։

1510. Կոստանդնուպոլսոյ Հայութեան
վրայ հասուածնիս չփակած, պէտք կը
զգանք յիշատակել Ամիր-
տօվլաթ բժշկապետը,
որ մայրաքաղաքի հայա-
բնակութեան ամէնէն

ԱՄԻՐՏՕՎԼԱԹ
ԲԺՇԿԱՊԵՏ

կարկառուն դէմքը կրնայ նկատուիլ այս
միջոցին։ Բնիկ Ամասիա քաղաքէ, որդի
Եղիայի, ուսմանց և գլխաւորապէս բժշկա-
կան ուղեկութեանց հետամուտ, թէ հըմ-
տութիւններ համբարեց, և թէ շատ գրեանք,
կ'ըսէ, եւ ժողովեցի յԱրաբաց և ի Պարսից
և ի Թուրքաց (ՌԱՄ. 341), որոնց մէջ հին
Յոյն բժշկարաններն ալ կը յիշէ։ Յովնան-
եան կը կարծէ թէ թարգմանութեանց վը-
րայ ծանօթացած ըլլայ յոյն գիրքերուն
(ՌԱՄ. 123), սակայն Ամիրտօվլաթ Յունա-
կան երկիրներու մէջ ապրած և լեզուագէտ
անձ ըլլալով, անհաւանական չենք կարծեր
զինքն յունարէնի ալ տեղեակ ենթադրել,
և այսպէս իմանալ իւր գրածն ալ, թէ աշխա-
տեմ զսա հինգ լեզուով, զինչ որ ասաց է Հայոց
և ի Հոռոմոց և յԱրաբաց, ի Պարսից և ի Թուր-
քաց, նաեւ Լատինաց (ՌԱՄ. 374)։ Հայ բժիշկներ
ալ կը յիշէ, Մխիթար, Աճարոն, Ստեփա-
նոս, Ծուլին, Սարգիս, Յակոբ, Դեղին,
Սիմաւոն, Վահրամ, որոնք շատ գրեանք չունել
էին, և զորոնք ինքն տեսեր է (ՏԱՇ. 199),
այլ մեզի հասած չեն, բացի Մխիթար Հերա-
ցիէն։ Իւր սիրած արուեստին հետամուտ,
զարթ եկաւ, կ'ըսէ, քաղաքն, զարթ
եկաւ, կը յաւելու, շնորհքն Մակեդոնաց-
ւոց (ՏԱՇ. 199), ուր 1469'ին աւարտած է
Օգուտ բժշկութեան գիրքը Ֆիլիպէի մէջ
(ՓԻՐ. 224), անկէ ետքն է որ եկաւ բնակեցաւ
կ'ըսէ, ի մայրաքաղաքն ի Կոստանդնուպօլիս, և
հոն ալ 1478'ին կը սկսի և 1482'ին կ'ա-
ւարտէ Անգիտաց անպէտ կոչուած բժշկական
բառարանը (ՌԱՄ. 342)։ Տարիքը որոշ չենք
գիտեր, այլ 1497'ին տեղի ունեցած է իւր

մահը, դեկտեմբեր 28, հինգշաբթի օր, և ոչ 29 (ՌԱՄ·364)։ Ըստ այսմ իր վերջին աշխատութենէն ետքը 15 տարի եւս ապրած կ'ըլլայ, բայց չենք գիտեր թէ ուրիշ ինչ աշխատութիւն գրած է, կամ թէ Կոստանդնուպոլսոյ հայաբնակութեան համար ինչ գործունէութիւն ունեցած է։ Ամէն առիթի մէջ մայրաքաղաքի գաղութին պատիւ բերող դէմք մըն է, զոր իրաւամբ կրնանք Գրիգոր Մագիստրոսէ (§ 866), և Մխիթար Հերացիէ ետքը (1027), պատուով յիշեալ աշխարհական մատենագիրներուն կարգին։

**1511**. Էջմիածնի վրայ խօսած ատեններս, պատմեցինք Վրթանէս Օձոպեցի եպիսկոպոսին, 1470'ին կամաւոր աղքատի ձեւով և կաղ մղանեսի կերպարանով Աղթամարի կաթողիկէին սպասաւորութեան մտնելը (§ 1504)։

**ԱՋԻՆ ՎԵՐԱԴԱՐՁԸ**

Եթէ բաւական զարմանալի է եպիսկոպոսի մը այդ դժուար վիճակը ստանձնելու յօժարութիւնը, ա՛լ աւելի զարմանալի պէտք է երեւնայ, 7 տարի չարունակ այդ վիճակին մէջ, անհնայն երկայնամտութեամբ յարատեւելը, որ միջոցին ո՛վ գիտէ որչափ տառապանքներ և հակառակութեանց ալ պարտաւորուեցաւ տոկալ, միաբաններուն և մեծաւորներուն երեսէն։ Սակայն Վրթանէս գիտցաւ իր հեզ ու աշխատասէր վարմունքով սիրելի դառնալ Ստեփանոս կաթողիկոսին, և հետզհետէ կաթողիկէին ծառայութեանց մէջ յառաջանալ, մինչեւ որ կործեցին զնա լուսաւոր եկեղեցւոյն, և զանօթոց և որթոցաբեանց քանդեցին, որոնց հետ նաեւ Լուսաւորչի Աջը, որուն բերուելէն 15 տարիներ անցեր էին, և հարկաւ նախանձոտ հսկողութիւնն ալ նուազած էր։ Եօթը տարի տառապած էր Վրթանէս, բայց վերջապէս նպատակին կը հասնէր, և իր գիտած աւարկաներն իրեն ձեռքին ներքեւ կը գտնուէին։ Այլեւս բարեդէպ պատեհի մը կը սպասէր, և զայն գտաւ ծանօթ Ջուղայեցի փերեզակներու եղելոյն և քրատոլէն Աղթամար կղզին մանելուն մէջ, որոնք եկեր էին քահանայել նորա և օտար, զէն և ուղտ և այլ ինչ։ Անոնց մէջ հանդիպեցաւ մանրիլ և վստահելի անձ մը, որուն իշուն կորդէնն, որ է դաշտն, այսինքն համետը ճեղքելով, մէջը զետեղեց Աջը և խաչալամն և ուրարը, և այնպէս դուրս հանեց կղզիէն, յանձնարարելով որ Բարսեղ դաշտադանեսցէ, մի եւս օտարէ յամեսցէ, այլ փոխանակէ առեալ հասցէ ի Ջուղայ։ Մէկ երկու օր ետքը, դադարեալ ինչ, ինքն ալ կղզիէն դուրս ելաւ, յանծանօթ տեղի ոտքի պարանը քակեց, կերպարանն ալ փոխեց, և իբրեւ ուրիշ մարդ մը Ջուղայ հասաւ (ԴԱՎ·330)։ Աղթամարին մէջ լուսարարին ուշանալը, քննութեան առիթ տուաւ, և Աջը պակաս ըլլալուն վրայ խնդրակներ հանուեցան, սակայն կաղ մղանեսին տեսնող չէր եղած։ Ջուղայէ աւետաւորներ ղրկուեցան Էջմիածին, միւս կողմէն Աջը պատուով փոխադրուեցաւ Նախիջեւան, ուր հասած էին եւս Յովհաննէս և Սարգիս կաթողիկոսներ, եկեղեցականօք և աշխարհականօք։ Հոն առաջ դադարեալ քառասուներ-ցին զաւուրս Այն, և յետոյ աշխարհախումբ թաղմաւորեամբ Էջմիածին բերին և հանգուցին ի սեղանական և ի բեմական աթոռն իւր (ԴԱՎ. 331)։ Այսպէս յաջողեցաւ Աջին Էջմիածին դառնալը, որուն վիճակուած էր միշտ գողունի կերպերով փոխադրուիլ Սիսէ Էջմիածին (§ 1449), Էջմիածինէ Աղթամար (§ 1493), և Աղթամարէ Էջմիածին։ Դավրիժեցին Աջը դիմաւորելու գացող Յովհաննէս և Սարգիս կաթողիկոսները յիշած ատեն, կ'աւելցնէ, որոց կամօք և խորհրդակցութեամբ ձեռնադրեալ էր Վրթանէս եպիսկոպոս այս գործ (ԴԱՎ·331), և որովհետեւ Սարգիս Աջատարն էր որ խորհուրդը տուած էր (§ 1504), կրնայ եզրակացուիլ թէ նոյնը տակաւին կենդանի ըլլար 1777'ն, Աջին վերադարձին տարին (ՋԱՄ·20), մինչ Սարգիս Աջատարի մահը կանուխէն տեղի ունեցած ըսինք 1774'ին (§ 1505)։ Բայց այդ եզրակացութիւնը ընդունելի չենք համարիր, քանի որ այն ատեն Դավրիժեցին ինքն իրեն հակասած պիտի ըլլար։ Վասնզի քիչ ետքը աւելի յստակ կերպով կը գրէ. Նոյն տէր Յովհաննէս, այլև եղև կաթողիկոս և այլ տէր Սարգիս։ Այս Յովհաննէս և Սարգիս կաթողիկոսաց ժամանակին Լուսաւորչէ Աջն դարձեալ է յԱղթամարայ, և եկեալ է ի սուրբ Էջմիածինն յաւուր Վրթանէս եպիսկոպոսին

(ԴԱՎ. 337)։ Հետեւաբար Յովհաննէսի Նախորդ և Յովհաննէսի աթոռակից երկու Սարգիսներու՝ Դավրիժեցին ալ պահ մը իրարու հետ շփոթած կ՚երեւի։ Կրնայինք ալ աւելցնել, թէ միւս այլ Սարգիսն ալ կրնայ ժամանակին Վրթանէսի ձեռնարկին գիտակից եղած ըլլալ, քանի որ Էջմիածնի մէջ գիրք վայելող եպիսկոպոս մը եղած պիտի ըլլայ, եթէ երեք չորս տարի ետքը աթոռակցութեան կոչուելու արժանի գտնուեցաւ (§ 1507)։

1512. Վրթանէս Օձնեցին իւր կատարած գործովը Էջմիածնի մէջ աթոռին յաւիտենական երախտաւորը ճանչցուեցաւ, և իրաւ ալ Մայրաթոռը պիտի կորսնցնէր իւր պատիւն ու փառքը, այլեւ իւր զօրութիւնն և իրաւունքը, եթէ Նուիրական Աջը Աղթամար մնար, քանի որ այնչափ մեծ էր հանրային կարծիքին կողմէ Աջին տրուած նշանակութիւնն ու կարեւորութիւնը։ Կաթողիկոսն ու աթոռակիցը, և եկեղեցական ու աշխարհական գլխաւորներ, ամէնն ալ իրենց կողմէ, բազում և անթուելի պարգևս բաշխեցին Աջը ազատողին, և ինչչափ նուէրք և ողջահամբոյրք Աջին ձօնուեցան, անոնք ալ Վրթանէսի յատկացուեցան, և միանգամայն որոշեցին որ Վրթանէս եպիսկոպոսն լիցի աթոռակալ կաթողիկոսացն, որպէս և էր ի կենդանէ (ԴԱՎ. 348)։ Վրթանէսի տրուած աթոռակալի պատիւը, ընդհանուր կերպով իմացուած է իբրեւ փակակալ կամ լուսարարապետ Կաթողիկէին, և քիչեր ուզած են զայն իմանալ իբրեւ աթոռակից կաթողիկոսութեան, և ըստ այսմ ալ անոր անունը կաթողիկոսական ցուցակին անցուցած են (ՁԱՄ. Բ. 227 Ե.)։ Սակայն մենք համամիտ պիտի չգտնուինք այդ վերջին մեկնութեան։ Վրթանէս ոչ մի յիշատակարանի մէջ իբրեւ կաթողիկոս յիշուած չէ, ինչպէս կոչուած են միւս աթոռակիցները։ Դավրիժեցին ինքն ալ, անոր հետեւողութեամբ Երեւանեցին ալ, Վրթանէսի անունը ցանկին չեն անցուցած, մինչ անցուցած են բոլոր աթոռակիցները։ Նոյնիսկ որպէս և էր ի կենդանէ՝ տրուած պաշտօնը պահելու պայմանը, մասնաւոր և փոխխական պաշտօնի մը կրնայ պատշաճիլ, և ոչ երբեք օծեալ և աթոռակից կաթողիկոսութեան։ Վրթանէս բաւական ատեն իրեն տրուած պաշտօնը վարած է Մայրաթոռի մէջ, և միայն է ժամանակս ծերութեան իւրոյ, և վասն անկարութեան մարմնոյ, որ հաւանաբար Աղթամարի մէջ վարած եօթնամեայ չարքաշ կեանքին հետեւանքն էր, հանգստանալու համար քաշուեցաւ մերձ իւրոց ուխտականացն, իւր ծննդավայրին կից եղող Օձնայ Ս. Աստուածածին վանքը, ուր և վախճանեցաւ և թաղեցաւ 1493՚ին, Աղթամարէ դառնալէն 16 տարի ետքը, ուսկից կը հետեւցնենք թէ յիսուն տարեկանէ աւելի էր դժուարին գործին ձեռնարկած ատեն։ Այլ թէ այս 16 տարիներէն որչափը Էջմիածին և որչափը Օձնայ անցուց չենք կարող ճշդել։ Վրթանէսի յիշատակը մեռնելովն ալ չմոռցուեցաւ, զի ամէն կաթողիկոսներ Յովհաննէսէ սկսելով, իբր հայրենաւանդ օրինաւ և աւանդութեան, իւրաքանչիւր տարի օր մը Օձնայ կ՚երթային, և Վրթանէս եպիսկոպոսի հոգւոյն պատարագ և հոգեհանգստեան պաշտօն և հոգեհաց կը կատարէին, և կը յաւերժացնէին Էջմիածնի մեծ երախտաւորին յիշատակը։ Այդ սովորութեան մինչեւ դար մը տեւած ըլլալուն կը վկայէ Դավրիժեցին, ուսկից ետքը կ՚երեւի թէ քիչ քիչ զանցառութեան հանդիպած է։

1513. Լուսաւորչի Աջին վերադարձը, որչափ ալ Վրթանէս Օձնեցիի անձնական աշխատութեանց և ճգանց արդիւնք, սակայն Յովհաննէս կաթողիկոսի օրով կատարուած յաջողութիւն մը ըլլալուն, անյարմար չդատեցինք, անով որոշել զինքն համանուն կաթողիկոսներուն մէջէն, և Աջակիր մակդիր անունը տուինք անոր, քանի որ ուրիշ կողմէն, ոչ ծննդավայրէն և ոչ նախընթաց պաշտօնէն տեղեկութիւն չէ տրուած զայն տարորոշելու համար։ Կաթողիկոսներու տրուած կարգի թուահամարը մենք անբաւական սեպած ենք համանունները իրարմէ զատելու, որովհետեւ այդ թուահամարները ժամանակին պաշտօնական կիրառութեամբ նուիրագործուած չեն, և վերջին գրողներն ալ իրարմէ տարբեր թուա-

ՎՐԹԱՆԷՍ ՕԾՈՊԵՑԻ

ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ՔԱՇՈՒԻԼԸ

համարներ կը գործածեն, և աւելի չփոթութեան՝ քան թէ ճշդութեան կը ծառայեն։ Այս է պատճառը, որ մենք անդատին մեր պատմական ուսումնասիրութեանց սկիզբէն աշխատած ենք իւրաքանչիւր անունին մակդիր անուն մըն ալ աւելցնել անխափան, գործածուածները ընդունելով և պակասները լրացնելով։ Իսկ կարգի թուահամարը կը պահենք միայն, իբրև ցուցակագրութեան պահանջ, հակաթոռները դուրս ձգելով, իսկ աթոռակիցները թուահամարէն անցնելով, Յովհաննէս Աջակիրին գործունէութեան գալով, Աջին վերադարձէն զատ ոչ մի եղելութիւն չենք գտներ իր օրով Մայրաթոռի մէջ կատարուած, և բոլորովին ամուլ միջոց մը կը կազմեն իր տարիները։ Գործունէութեան պակասութեան հետ, անծանօթ կը մնան իր պաշտօնավարութեան տևողութիւնն ալ, վերջաւորութիւնն ալ։ Դավրիժեցին ոչ մի յիշատակութիւն չունի 1476 և 1493 տարիներուն մէջ, և վերջին թուականին ներքև առաջին անգամ Միւս-Այլ Սարգիսը գլուխ կ'անցնէ, ուսկից կրնար եզրակացուիլ, թէ Յովհաննէսի կաթողիկոսութիւնը մինչև 1493 տևած ըլլայ, որ կ'ըլլայ մերձաւորաբար 20 տարի տևողութիւն, 1474'էն սկսելով (§ 1505)։ Բայց այդ չէ մեր պաշտպանելիք ժամանակագրութիւնը, և մեր տեսութիւնը կը պարզաբանենք, իրերը իրենց իսկութեան մէջ նկատի առնելով։ Յիշատակներու և ակնարկներու դատարկութեան մէջ, մեզի իբրև թանկագին աղբիւր կը նկատենք Ոսկեանի ժամանակագրութիւնը, ուր կը յիշուի Յովհաննէս կաթողիկոսին 1485'ին Լեհաստանի Կամենից քաղաքին մէջ գտնուիլը (ԱՐԲ· 230)։ Ինչ առիթով կամ ինչ պատճառով այդ հեռաւոր ուղևորութեան ձեռնարկած էր, կամ թէ Լեհահայ գաղթականութեան համար ինչ գործունէութիւն ունեցած էր, Ոսկեան չբացատրեր և տեղւոյն յիշատակարաններն ալ կը լռեն, և բնաւ նշոյլ մը չենք կրնար գտնել՝ ուսկից լուսաբանութիւն մը քաղենք։ Յովհաննէս առաջին կ'ըլլայ Էջմիածնի կաթողիկոսներուն մէջէն, որոնք տարաշխարհ ուղևորութեան ելած են կրկին նպատակներով, գաղթական Հայերու հոգևորական կացութիւնը հսկելու, և գաղթական Հայերէ նիւթական նպաստներ հաւաքելու, Մայրաթոռոյ կարօտութիւնը դարմանելու, և անյագ տիրապետողներու դրամական քաղցը յագեցնելու համար։ Եթէ 1485'ին Կամենից կը գտնուէր, առնուազն 1484'էն Էջմիածինէ մեկնած կ'ըլլար, և որովհետև նորէն դառնալն ալ չյիշուիր, իր աթոռը մնացածի պէս տարաշխարհ թափառող մը կ'ըլլայ այլևս, և իբրև գահակալ նկատելու պէտք չմնար, որով մենք ալ յիշեալ 1484 թուականէն Յովհաննէսը հրաժարականով աթոռէն հեռացած կը նկատենք, և իր կաթողիկոսութեան տևողութիւնը կը փակենք։

**1514**. Յովհաննէս կաթողիկոսի մը անունը տեսեր են ոմանք 1505 թուականին ներքև (ԱՐԲ. 230), և նոր Յովհաննէսի մը դիմաց գտնուիլ կը կարծեն, սակայն նոր Յովհաննէսի մը անունը չյիշուիր Դավրիժեցիէն և Երևանեցիէն, թէպէտ բազմաթիւ աթոռակիցներու անուններ ցուցակագրուած են (ԴԱՎ. 337), ինչպէս պիտի տեսնենք։ Ուստի կը հաւանինք նոր Յովհաննէսի մը գոյութեան ենթադրութիւնը մէկ կողմ թողուլ, և ըսել թէ 1474'ին բուն գահակալութեան անցած, և 1484'ին Էջմիածինէ և աթոռէ հեռացած, և 1485'ին Կամենից գտնուող Յովհաննէս Աջակիրն է, որ տակաւին կ'ապրէր 1505'ին, և իր անունը պատահաբար գրուած է մասնաւոր յիշատակարանի մէջ, որուն ուր և երբ գրուած ըլլալը ցուցուած չէ, և թերևս Լեհաստանի մէջ գրուած յիշատակարան մըն է, ուր կը գտնուէր Յովհաննէս։ Եթէ կը ներուի մերձեցուցմամբ ընդարձակել պատմական պարագաները, մենք իբր հաւանական պիտի ընդունէինք, նոյնացնել Յովհաննէս Աջակիրը, այն Յովհաննէս Հայրապետին հետ, որ 1508'ին Սարգիս եպիսկոպոսի և Դաւիթ կրօնաւորի մը հետ, Կոստանդնուպոլիս եկան Էջմիածնի նուիրակութեամբ, այնտեղ Նահապետեան [illegible] (ԱՍՏ. Ա. 257), և անուններին տօնացոյցի մը մէջ ալ նշանակուեր է, թէպէտ այդ յիշատակը յառաջ բերողը կ'աւելցնէ թէ չէ՛ է մէջ [illegible] Նահապետութեան Նոյն-

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԱՀԱՏԱԿ

(ՎՐՔ. Ե. 280)։ *Շատ յարմար կու գայ ըսել, թէ Յովհաննէս Էջմիածնի համար նպաստ հաւաքելու նպատակով Հայ գաղթականներու շրջանը կատարած ատեն, այդպիսի վախճան մը ունեցած ըլլայ Կոստանդնուպոլսոյ մէջ։ Այդ ենթադրութեան իբր հաստատութիւն կրնանք աւելցնել թէ,* տէր Յովհաննէս արքեպիսկոպոս Աւանդէկէնց և Սարգիս եպիսկոպոս և Ստեփանոս եպիսկոպոս և Դաւիթ աբեղայ, 1506'ին է հայրապետութեան տեառն կաթողիկոսի տէր Սարգիսի *կը գտնուին Սեչով կամ Սուչաւա քաղաքը* Նուիրակ է սուրբ Էջմիածնէն (ՏԱՇ. 55)։ *Յովհաննէսի անխտիր հայրապետ կամ կաթողիկոս կամ արքեպիսկոպոս գրուիլը կրնայ մեկնուիլ իւր հրաժարեալ կաթողիկոսի կերպարանովը։ Այդ ենթադրութիւնները ստուգութեան կը մօտենան ուրիշ յիշատակարանով մը, ուր պատմուած է Էջմիածնի նուիրակներու Ամասիոյ մէջ նահատակուիլը* (ՀԱՑ. 587)։ *Նուիրակներն են* Մեծ Յովհաննէս եպիսկոպոս ազնուական և տէր Սարգիս եպիսկոպոս և Դաւիթ կոյս աբեղայ, *որոնք միւռոնով և օրհնութեամբ կու գան Բիւզանդիա, անկէ կ'անցնին, Կաֆա, Մոլտաւիա, Սուչաւա, Իլվով, Աքքըրման, և կը դառնան Կոստանդնուպոլիս, ուսկից իբր թէ Դաւիթը* Ամասիա *կը ղրկեն, և հոն կը ձերբակալուի իբր լրտես և տանջանքներու կ'ենթարկուի։ Սակայն Ամասիայի յիշատակութիւնը աւելորդ և անիմանալի կը մնայ, վասնզի առանց ուրիշ ծանօթութեան երեքը միասին կը գտնուին ձերբակալուած։ Մեծ վէզիր Ալի փաշայի կը հանուին,* խոնդքարէ *կամ հիւնքեարի՝ որ է սուլտանին լուր կը տրուի, մեծ* տիվան *կը կազմուի,* Ղափճոց օտան *կը բանտարկուին, որոնք ամէնքը Կոստանդնուպոլսոյ և ոչ Ամասիայի կը պատկանին։ Երեքն ալ ուրացութեան չհաւանելնուն* է ղուրղուրանէն ղօնաղըն տակ տասը հոգետասն *տանջուելէ ետքը* (ՀԱՑ. 589) *կը գլխատուին* 1506 *նոյեմբեր* 17'*ին* (ՀԱՑ. 590)։ *Նոյն անուններ և նման պարագաներ կը յորդորեն նոյնացնել այդ զանազան յիշատակները, թուականի տարբերութիւնն ալ չուտով կը մեկնուի Ե և Է հայ թուատառերու չփոթութեամբ, և կրնանք իբր ստոյգ ընդունիլ Յովհաննէսի և իւր ընկերներուն նուիրակութեամբ երկար պտոյտներէ ետքը* 1506'*ին Կոստանդնուպոլիս նահատակուիլը։*

**1515**. *Այդ ժամանակամիջոցին պակաս չեղան ուրիշ հաւատոյ նահատակներ ալ, թէպէտ ոչ ընդհանուր հալածանքի մը հետեւանօք։ Ասոնք անձնական պատահարներու պատճառով կեանքերնին զոհողներ եղած են, յաճախ կեղծ կամ սուտ ուրացութենէ մը ետ դարձած ըլլալու պատրուակով։ Այդ կարգին յիշենք նախ Ստեփանոս Կոստանդնուպոլսեցին,* Մանուկ *կոչուած նորահաս երիտասարդ ըլլալուն համար, և նոյնիսկ մայրաքաղաքին մէջ նահատակուած* 1471'*ին, այլ պարագաները անծանօթ մնացած* (ՉԱՄ. Գ. 515)։ *Դաւիթ Խարբերդցի, տէր Գրիգոր քահանային երիտասարդ որդին* (ՍԱՄ. 175) *տաճկացեալ քեռայրէն ամբաստանուեցաւ իբրեւ թէ մահմետական օրէնքը հայհոյած ըլլայ, ձերբակալուեցաւ և* 20 *օր բանտարկուեցաւ, ուսկից վերջը իւր հօր խիկ քաջալերութեամբ ուրացութեան չզիջանելուն, մոլեռանդ բազմութենէ խոշտանգուեցաւ, կրակով ալ տանջուեցաւ, և սրախողխող նահատակուեցաւ* 1474 *յունուար* 16, *կիրակի օր* (ՆՈՐ. 308)։ *Ըստ այսմ բանտարկութիւնն ալ եղած կ'ըլլայ* 1473 *դեկտեմբեր* 27'*ին։ Սիրուն Հիզնացի կամ Հիզանցի, այս ալ երիտասարդ մը* 25 *տարեկան, մօրը տաճկանալուն վրայ, զինքն ալ կը բռնադատեն մօրը հետեւիլ, այլ նա խստիւ կ'ընդդիմանայ քրիստոնէութիւնը փառաբանելով, որուն վրայ բազմութիւնը կատաղելով, տեսակ տեսակ տանջանքներէ և խոշտանգանքներէ ետքը կը բանտարկեն, երկու օր յետոյ նորէն չարչարելու կը ձեռնարկեն, սիւնի մը պրկելով անխնայ կը խոցոտեն, և գիշերն ի բուն այնպէս թողլով, առաւօտուն հրապարակ կը տանին, ձեռուըները կը կտրեն և բոլոր ներկաներ սուրերով կը վիրաւորեն մինչեւ* ու ձայց տեղէ ողջ է մարմինն նորա։ *Նահատակութեան օր նշանակուած է* 1476 *յունուար* 14 (ՆՈՐ. 312)։

ՆՈՐ ՎԿԱՆԵՐ

**1516**. *Ստեփանոս Տաթեւացի, եղբօրորդի Շմաւոն արքեպիսկոպոսի* (§ 1453), *և ինքն ալ Տաթեւի արքեպիսկոպոս, որ*

աղջիկ մը առեւանգող և տաճկացող աբեղայ մը ուժգին միջոցով հա էր բերած, և երկուքն ալ ապաշխարութեան արժանացուցած (ՆՈՐ. 313)։ Ժամանակ կ'անցնի այդ գործին վրայ,

ՍՏԵՓԱՆՈՍ ՏԱԹԵՒԱՑԻ

և 1477'ին Ուզուն Հասանի մեռնելուն և Եաղուպի յաջորդելուն առթիւ, Հայաստանի կողմին իշխանը Խալիլ Սօֆու, որ է կրօնաւէր խլամ անձ մը, կ'ուզէ յապաղեալ վրէժը լուծել, և նենգութեամբ կը հրաւիրէ Ստեփանոսը, որ պոմպութեամբ կու գայ, իրեն հետ առնելով և իւր ազգականներէն քրոջ որդին եպիսկոպոսը, և մօրեղբօրորդի աբեղայն, որոց անունները չեն գրուած։ Խալիլ կեղծ պատուասիրութենէ ետքը ուրացութիւն կ'առաջարկէ, և արքեպիսկոպոսին և ընկերներուն դիմադրութեան վրայ կ'երդնու, էր երկոտասան կէնն չխնէ ճողոպ լինի. թէ այդ կանէք այլ ճար չկայ (ՆՈՐ. 315)։ Իբրեւ փորձ, նախ 8 օր և դարձեալ 12 օր անսուաղ բանտարկութենէ ետքը, առաջ կը ձեռնարկէ ընկերները տանջել, և իւր հրամանով երկուքն ալ որդւոյ շղթէք կապելով, մեղեխոզոյն խորշէցին կաթսայի մէջ, և շամբեղոյն խորովէցին կրակի վրայ, նոյնիսկ Ստեփանոսի աչքին ներքեւ, որուն վրայ էր գլխաւորապէս Խալիլի ցասումը։ Այսպէս կատարուեցաւ երկուքին նահատակութիւնը 1478 թուականին։ Իսկ Ստեփանոս հազիւ հոգեպահիկով տարի մը բանտարկութիւն քաշեց, ուսկից ետքը բոլոր ակռաները հանելով գանկին վրայ բեւեռեցին, և դարձեալ երկար բանտարկեցին, մինչեւ որ վէրքերը սպիանան։ Անկէ ետքն ալ հետզհետէ նոր տանջանքներ հնարելով նեղեցին։ Անգամ մը բեւեռաքարշով մարմնոյն վրայ վաթսուն տեղէ վիրաւորեցին, անգամ մըն ալ բոցերու վրայ խանձեցին, անգամ մըն ալ գլուխը գերծելով և մեղրով օծանելով ընկոյզի կճեպի մէջ փակուած սեւ բզէզներ կապեցին, որ գանկը ծակեն և ուրիշ տանջանքներ ալ հնարեցին։ Այսպէս հինգ ամ բոլոր ի շուրջուրանս և ի բանտ կացեալ կապանօք, սովով և ծարաւով, տեսեալ այնքան տանջանաց (ՆՈՐ. 317)։ Վերջապէս Ստեփանոսի քոյրը գնաց անկաւ յոտս մօր ֆաթիշահին, որ յուղարկելով հրաման ղրկեց Խալիլի Ստեփանոսը արձակել, իսկ նա երդումը պատճառելով կը պնդէր, մինչեւ որ թագուհին մարդ ղրկելով թանութեամբ ազատեաց Ստեփանոսը ի ձեռաց Խալիլի, և յուղարկեաց ի վանս իւր ի Տաթեւ (ՆՈՐ. 318), և այս եղաւ 1483'ին, (ՆՈՐ. 319), և ոչ 1453'ին, ինչպէս ուրիշ տեղ գրուած է (ՍԻՍ. 528), վասնզի այն տեղ ալ յիշուած է Եաղուպի թագաւորութեան ժամանակը (ՍԻՍ. 526), որ 1478'ին գահակալած է։ Ստեփանոս տարի մը Տաթեւի մէջ կազդուրուելէն ետքը Երուսաղէմի ուխտաւորացութիւնը կատարեց, և Տաթեւի վանքը դառնալով, չուտով վախճանեցաւ սրբութեամբ և խոստովանողական մահուամբ, զոր իդէպ է նշանակել 1485'ին։

# Տ. ՍԱՐԳԻՍ Գ. ՄԻՒՍԱՅԼ

**1517**. Երբոր Յովհաննէս Աջակիր էջմիածինէ մեկնեցաւ 1484'ին (§ 1513), արդէն օծեալ կաթողիկոս մը կար իրեն աթոռակից, որ նովին իսկ աթոռին բուն գահակալը կ'ըլլար, և աթոռակիցէ աւելի բան մը, քանի որ իրմէ գերագոյնը չկար Մայրաթոռի մէջ։

ՅԱՋՈՐԴԵԼՈՒՆ ՊԱՐԱԳԱՅՆ

Այդ կաթողիկոսն էր Սարգիսը, ոչ Աջատարը, ինչպէս շատեր շփոթեցին։ Մենք արդէն չեշտեցինք երկու Սարգիսներու տարբերութիւնը, պնդելով Դավրիժեցիին Մխաս այլ տէր Սարգիս բացատրութեան վրայ (§ 1507), և որովհետեւ այդ վերջին Սարգիսին ալ ծագումը և նախկին պաշտօնը մեզի անծանօթ է, կրճիմը լուծող բառերը իբր իրեն որոշիչ և մակդիր անուն կ'ընդունինք, և Սարգիս Գ Միւսայլ կը կոչենք, և Յովհաննէսի մեկնելուն թուականէն զինքն իբր բուն գահակալ կը նկա-

տենք։ Առով Յովհաննէսը իբր վախճանած չենք ուզեր ցուցնել, այլ իբր գործէ ձեռնթափ և բուն գահակալութենէ հրաժարած կը սեպենք, կամ թէ աթոռակիցի կերպարանին ներքև մնած, որովհետև արդէն ընդունեցանք Լեհաստանի մէջ իբրև կաթողիկոս գացած և ապրած ըլլալը, և մինչև իսկ հաւանական նկատեցինք, որ Կոստանդնուպոլիս նահատակուած Յովհաննէս հայրապետը եղած ըլլայ (§ 1516)։ Միւսայլ Սարգիս որ Յովհաննէսի հեռանալովը աթոռին տէրը կ'ըլլար, նշանաւոր եղած է իր օրով աթոռակցութեան բարձրացողներու շատութեամբը, որոնք Արիստակէս Գ., Թադէոս Ա. և Եղիշէ Բ. անուններով սովորական ցուցակներու ալ անցած են իբր բուն կաթողիկոսներ (ԺԱՄ. 636), ինչ որ հնար չէ ընդունիլ, քանի որ միևնոյն ատեն աթոռի վրայ կը գտնուէր վերոյիշեալ Սարգիսը, որ բուն գահակալն էր։ Մենք կանոններու և օրէնքներու և ընկալեալ սովորութիւններու հակառակ կը նկատենք, միևնոյն աթոռի վրայ և միևնոյն ժամանակ մէկէ աւելի գահակալներ ճանչնալ, ընդունելով միայն որ գահակալներ, առանց հրաժարելու, կարենան իրենց մօտ լիազօր փոխանորդներ կամ գործակիցներ կամ աթոռակիցներ ունենալ, որոնք կարենան համահաւասար կերպով բոլոր վրենց բրած գործերը կատարել, միւռոնի օրհնութիւնն և եպիսկոպոսի ձեռնադրութիւնն ալ մէջը ըլլալով։ Սակայն այսպէս ըլլալով ալ աթոռի տէր և բուն գահակալ չեն կրնար ըսուիլ, և իրենց անունը կաթողիկոսական գաւազանին չկրնար անցնիլ, մինչև որ բուն գահակալին մահուամբ կամ հրաժարմամբ աթոռը չդատարկանայ։

**ՉՈՐՍ ԱԹՈՌԱԿԻՑՆԵՐ**

**1518**. Ներկայ պարագայիս մէջ, Դավրիժեցին, որ մեզի առաջնորդ եղող նշանաւոր հեղինակութիւնն է, 1493, 1499, 1504 և 1506 թուականներուն ներքև, հատատուն կերպով կը կրկնէ, նոյն տէր Սարգիս բացատրութիւնը, որով այդ ժամանակամիջոցին համար անհրաժեշտ է Միւսայլ Սարգիսը իբր բուն կաթողիկոս ճանչնալ, և չարդարանար, 1466'է Սարգիս Գ, 1490'է Արիստակէս Գ, 1498'է Թադէոս Ա, և 1503'է Եղիշէ Բ անունները իբր բուն կաթողիկոս արձանագրելու դրութիւնը (ԺԱՄ. 636)։ Կը մնայ միայն հետազօտել թէ Միւսայլ Սարգիսի հետ եղող աթոռակիցներ չորսը մէկտեղ պաշտօնի վրայ գտնուած են, թէ ոչ իրարու յաջորդելով պաշտօն վարած են։ Այդ հետազօտութեանց ալ գլխաւոր աղբիւր կ'ընդունինք Դավրիժեցին, ուրիշ մասնաւոր յիշատակներու հետ բաղդատելով, քանի որ չեն հրատարակուած Փիրղալէմեանի հաւաքածոյին յիշատակարանները, որ կրնային միայն լուսաբանութիւններ ընձեռել։ Այդ կարգին առաջին նշանակած են ոմանք Վրթանէս Օձոպեցին (ՋԱՄ. Բ. 227'Ե) զոր մենք արդէն չընդունեցանք (§ 1512), որով առաջին կը մնայ Արիստակէս, զոր կը համաձայնինք Արիստակէս Գ. ըսել, բայց լոկ աթոռակցութեան իրաւունքով։ Դավրիժեցին զայն կը նշանակէ 1493'ին (ԴԱՎ. 337) և Երևանեցին 1492'ին (ՋԱՄ. 20)։ Սակայն ուրիշ յիշատակարաններ 1486'է ունին անոր անունը (ԱՐՐ. 230), ինչ որ կը ցուցնէ թէ Յովհաննէսի մեկնելէն քիչ ետքը, Սարգիս պէտք զգացած է իրեն աթոռակից մը առնել, որով ինքզինքը բուն գահակալ նկատած է, ինչպէս որ մենք ալ արձանագրեցինք։ Իսկ 1499'ին միւս աթոռակիցը յիշած ատեն, Դավրիժեցին այլ ևս Արիստակէս անունը չտար, որով կը թելադրուինք հետևեցնել թէ Արիստակէս Գ 1499'ին կամ քիչ առաջ վախճանած է, և Սարգիս առանց ընկերի չմնալու համար նոր աթոռակից մը առած է, ինչպէս որ ըսած ալ է թէ, այլ և եղև կաթողիկոս տէր Թադէոս (ԴԱՎ. 337), զոր չենք վարանիր Թադէոս Ա կոչել, պարզապէս աթոռակցութեան տեսակէտէն։ Այդ Թադէոսի անունն ալ այլևս չկրկնուիր, երբ 1504'ին նոր աթոռակից մը կը նշանակուի. այլ և եղև կաթողիկոս տէր Եղիշէ, բայց միշտ կը կրկնուի բուն գահակալին անունը, նոյն տէր Սարգիս (ԴԱՎ. 337)։ Այս տեղ ալ իրաւունք կունենանք հետևեցնել թէ Թադէոս Ա մեռած էր 1504'ին կամ քիչ առաջ, որով դարձեալ իբր միակ աթոռակից պաշտօնի կը կոչուէր Եղիշէն, որ և Եղիշէ Բ աթոռակցութեան իրաւունքով, որով երկուքէ աւելի չեղան երբեք կա-

թողիկոսները մինչեւ 1506։ Այս տարւոյն ներքեւ Դավրիժեցին երեք անուններ միանգամայն կը դնէ, Նոյն տէր Սարգիս, և նոյն տէր Եղիշէ, այլ և եղև կաթողիկոս տէր Ներսէս (ԴԱՎ. 337)։ Աթոռակիցներու կրկնումը կրնայ հետեւանք ըլլալ առջի երկուքներէն մէկին, և աւելի հաւանականութեամբ Սարգիսին, տկարացած վիճակով աշխատութեան և յոգնութեան անբաւական գտնուելուն։ Այդ Ներսէսը կրնայինք իրաւամբ Ներսէս Ե կոչել, ինչպէս գրողներ ալ գտնուեցան (ԱՐՐ. 230), սակայն Ներսէս Ե կոչումը վերջին ատեններ Աշտարակեցիէն պաշտօնապէս գործածուած ըլլալուն իւր ստորագրութեան մէջ, և աթոռակից Ներսէսն ալ բուն գահակալութեան անցած չըլլալուն, պէտք չենք ունենար թուահամարներու փոփոխութիւն ընել, և առանց թուահամարի կը թողունք Սարգիսի վերջին աթոռակիցը։ Իսկ Աշտարակեցիին Ներսէս Ե թուահամարը առնելուն պատճառը Չամչեան է, որ առանց մի փաստի, ուզած է աթոռակից Ներսէսը նոյնացնել Աղթամարայ Ստեփաննոս կաթողիկոսի եղբայր և յաջորդ Ներսէսի հետ, և մինչեւ իսկ Դավրիժեցին սխալած ըսելու չափ յառաջ գացած է (ՉԱՄ. Գ. 509)։ Չամչեանի հետեւողութեամբ է, որ սովորական ցուցակն ալ զանց ըրած է Ներսէսի անունը (ԺԱՄ. 636), թէպէտեւ Երեւանեցին ընդունած է զայն 1506 թուականի ներքեւ, մինչեւ իսկ իբր գլխաւոր ու բուն աթոռակալ ցուցնելով (ՋԱՄ. 20)։ Այդ տեղ կը վերջանան Դավրիժեցիէն յիշուած Սարգիսի աթոռակիցները, որոնք իբարու յաջորդելով պաշտօն վարած են, և միայն վերջին տարիները երկու աթոռակիցներ միանգամայն գտնուած են։

**1519.** Իբր թէ Դավրիժեցիէ յառաջ բերուած աթոռակիցներու անունները քիչ ըլլային, ոմանք ուզած են ուրիշներ ալ աւելցնել ինչ ինչ թերի կամ թիւրիմաց ակնարկներու վրայ հիմնուելով։ Սակայն մենք չենք կրնար այդ անունները ցուցակին աւելցնել, և կը հիմնուինք Դավրիժեցիին և Երեւանեցիին լռելուն վրայ, որոնք հաւատարմագոյն և հմտագոյն աղբիւրներն են։ Աւելցածներէն

КԱՐԾԵՑԵԱԼ ԱԹՈՌԱԿԻՑՆԵՐ

բէն մէկն էր Վրթանէս Օձոպեցին, որուն վրայ կանուխէն գրած ենք (§ 1512)։ Իսկ երկրորդն Յովհաննէս մը որ իբր նոր անձ երբեք յիշուած չէ, և որուն նկատմամբ եղած յիշատակութիւնները շատ լաւ կրնան պատշաճիլ Յովհաննէս Աջակիրին, ինչպէս որ իւր կարգին բացատրեցինք (§ 1514)։ Դաւիթ մըն ալ տեղ մը յիշուեր է եղեր, թէպէտ մենք չենք տեսած, և ոչ ալ գիտենք թէ ինչ հիմամբ Ներսէս և Դաւիթ միեւնոյն անձր կարծուած են (ԱՐՐ. 230), և չենք համարձակիր կաթողիկոս մը կամ աթոռակից մը աւելցնել, և ոչ ալ երկանուն մը ընդունիլ։ Առանցմէ զատ 1488 թուականին գրուած յիշատակարանի մը մէջ, ի հայրապետութեան տէր Յովհաննու անունիլը (ԱՐՐ.230), իրաւունք տուած է ոմանց Յուսիկ Բ կաթողիկոս մըն ալ աւելցնել այդ միջոցին, զոր չունին ոչ Դավրիժեցին և ոչ Երեւանեցին, որ է ըսել թէ Մայրաթոռի մէջ լսուած անուն չէ։ Այս առթիւ դիտել կուտանք, թէ Հայրապետ և հայրապետութիւն կոչումը հիներուն սովորութեամբ միայն կաթողիկոս և կաթողիկոսութիւն իմաստով գործածուած չէ, այլ վանքերու մէջ, ինչպէս վանական վարդապետները Հայր կը կոչուին, վանահայրն ալ Հայրապետ կը կոչուէր, իբրեւ Հայրերապետ, և համապատասխանող նորագոյն Աբբահայր կոչման։ Այսպէս գրուած կը գտնենք. Ի հայրապետութեան տէր Սահակայ առաջնորդին Վարագայ (ՓԻՐ. 10), կամ Եւ Տէրոն աբեղայս, որ ի Նորքեան ժամանակիս հերապետ կոչիմ հաւատոյ մենաստանիս սուրբ Վարագայ (ՓԻՐ. 45), և յաճախ ուրիշ յիշատակարաններու մէջ ալ։ Այդ միեւնոյն միջոցին, այսինքն 1491 թուականին կը տեսնենք Յուսիկ մը Գուգարաց Ս. Կարապետ վանքին առաջնորդ, որուն անունը կաթողիկոսին հետ յիշուած է, ի կաթողիկոսութեան Հայոց տէր Սարգսի և յեպիսկոպոսութեանն մերոյս տէր Յովհաննու (ԹՈՐ. Ա. 120), և կը կարծենք, թէ ուրիշ տեղ մը նոյն Յուսիկին հայրապետի անուն տրուած ըլլալը, յորդորած է ոմանք (ԱՐՐ. 230) Յուսիկ կաթողիկոս մըն ալ աւելցնել Սարգիսի բազմաթիւ աթոռակիցներու շարքին, մինչ մենք բաւական փաստ չենք գտներ իրենց

կարծիքը ընդգրկելու։ Անցողակի աւելցընենք, որ Ալիշան, այդ գիւտին հեղինակը, Ցուսիկ Բ և ոչ Ցուսիկ Գ կը կոչէ իր գաղափարած կաթողիկոսը, որով անուղղակի կերպով հերքած կ'ըլլայ անոնց կարծիքը, որոնք Ներսէս Մեծէ ետքը Ցուսիկ Բ կաթողիկոս մը կը դնեն և կը պնդեն, (§ 157), պարզապէս գրչութեան տառերու տարբերութեամբ կազմուած ենթադրութիւն մը։

1520. Սարգիսի երկարատեւ պաշտօնավարութիւնը, ինչպէս և իր անձն ալ խաղաղ անցած են կարեւոր գործունէութենէ, և

**ԺԱՄԱՆԱԿԻՆ ԱՄԼՈՒԹԻՒՆԸ**

պատմութիւնը ոչ մի արդիւնաւորութիւն կամ եղելութիւն չգտներ, որով կարենայ անոր ժամանակը ճոխացնել, և պարտաւորեալ պիտի կրկնէ վշտացեալ Երեւանեցիին ողբագին յանգերգը, թէ չայտան միջոց գրենէ ամբէ ոնտա է վաս անտր ընթանայր որ տտոր և յանկարծութեան (ՋԱՄ. 19)։ Հազիւ 30 տարիներ անցեր էին այն ողբալի և ողբերգական դէպքերէն, երբ բազմաթիւ նշանաւոր և գիտնական անձեր էջմիածնի մէջ հաւաքուելով աթոռին փոխադրութեան և եկեղեցւոյն վերանորոգման կենսական գործերուն կ'աշխատէին, բայց ահա ոչ անոնք կային այլեւս, և ոչ արժանաւոր հետեւորդներ և յաջորդներ ունեցած էին, և Մայրաթոռոյ կաթողիկոսներուն ապարդիւն պաշտօնավարութեան զուգակշիռ կ'ընթանար եկեղեցական դասակարգին ալ անկեալ վիճակը, որ և ոչ համառօտ պատմութիւն գրող մը գտնուած է։ Զեն երեւար այլեւս Տաթեւի և ուրիշ վանքերու բեղմնաւոր աշակերտութիւնները, դիմացնիս չեն ելլեր արդիւնաւոր վարդապետներ, բնաւ յիշատակ չունինք որ և է գործի և արժէքաւոր հեղինակութեան։ Երբ Մեծոփեցին, կսկծագին կը յանդիմանէր Հերմոնեցին, Վիրապեցիին դէմ նիւթած դաւաճանութեանը համար, ըսած էր, ղեկավարն Հայոց աշխարհին տարաժամութեանն խափանեցեր (ԿՈՍ. 84), և կարծես թէ չարագուշակ կանխատեսութիւն մը ունեցած էր ողբալի գործիչը, որ արդեամբ կը կատարուէր այդչափ արագ կերպով, մեզ ալ իրաւունք տալով իրեն հետ մեղադրել զանմտութիւն ազգիս մերոյ, և ատել և չարիս և թերս և անհնազանդ թշնամեացն չարիս, և զանպատմութիւն կրօնաւորաց Հայկազն սեռի (ԿՈՍՍ. 85)։ Բայց ողբը թողունք, ու պատմութեան դառնանք։ Առջի ժամանակներու իբրեւ վերջին բեկոր մնացած էր Մկրտիչ Նաղաշ վարդապետը, որ Կաֆայի պանդխտութենէն իր եպիսկոպոսական աթոռը, Ամիդ կամ Տիարպէքիր դառնալէն ետքը (§ 1474), 1473'ի ժանտամահին առթիւ զգայուն ողբ մը գրեց իր ծերութեան ատեն, և ինքն ալ քիչ ետքը վախճանեցաւ։ Ցիշենք նաեւ Կիրակոս Երզնկացի վարդապետը, ուսկից մնացած է Ոսկեփորիկ գիրք մը, հաւաքածոյ խրատական գրուածներու և ժողովրդական ոտանաւորներու և քահանայական հրահանգներու, միջակ և աշխարհաբար ոճով։ Իրեն կը պատկանի նա Աստուածածնայ Անձինք կոչուած Արեւելք գերարփին չարականը, որ չարդարացներ բնաւ ստանձնէլ զորական գովեստը, զոր ոմանք կարծած են տալ անոր (ՋԱՄ. Գ, 509)։ Եւ կը ստիպուինք այսչափով փակել ժամանակակից նշանաւոր և գիտական անձերու վրայ տրուելիք ծանօթութիւնները։

1521. Քաղաքական կացութիւնը նոր կերպարան առաւ այդ միջոցին, վասնզի Ակքօյունլուներու թագաւորութիւնը, Գարաքօյունլուները ընկճելով իր գագաթնակէտը հասնելէն ետքը, յանկարծ դէպի կործանում սկսաւ քալել։

**ՍԷՖԻՆԵՐՈՒ ԶՕՐԱՆԱԼԸ**

Ուզուն Հասանի 1479'ին մեռնելէն ետքը՝ անոր յաջորդեց Եաղուպ, թէպէտ ոմանք անկէ առաջ Խալիլ մըն ալ կը յիշեն, որ քանի մը ամիս գահը յափշտակեց։ Եաղուպ հազիւ մինչեւ 1485 կըրցաւ իշխանութիւնը պահել հակառակորդներու հետ մաքառելով, և իր գլխաւոր սպանութենէ ետքը, բազմաթիւ մրցակիցներ իրարու հետ պատերազմելով և իշխանութիւնը իրարմէ յափշտակելով իրենց տէրութեան կործանումը փութացուցին, մինչև որ նոր և բնիկ Պարսիկ հարստութիւն մը տիրեց դարուս վերջը 1499'ին, այն է Սէֆիներու կամ Սոֆիներու ազգատոհմը։ Սէֆի ինքն Արտաւիլի իշխանն էր և զօրաւոր

ցեղի մը չէյխը, որ Ճիհանշահի երեսէն փախստական Ուզուն Հասանի մօտ ապաւինած և անոր քրոջը հետ ամուսնացած էր։ Շէյխ Սէֆի Շիրվան գաւառը գրաւել ուզած ատեն պատերազմի մէջ մեռաւ, և իրեն յաջորդեց որդին Շէյխ Հայտար, որ Ուզուն Հասանի աղջկան հետ ամուսնացած էր։ Միշտ հետամուտ էր իւր հայրենական ժառանգութիւնը ձեռք ձգելու և հօրը սպանութեան վրէժը լուծելու, բայց չյաջողեցաւ, և ինքն Հայտար և իւր երեք զաւակները՝ Ալի և Իպրահիմ պատերազմի մէջ մեռան, և մնաց միայն մանուկն Իսմայէլ (ՏՊէ. 353) զոր Աղթամար կղզին փախուցին և հոն աճեցաւ Հայերու խնամատարութեամբ (ՋԱԲ. Ա. 7), Իսմայէլ, որ մօրենական ազգակցութեամբ Ակքօյունլուներէն սերած էր, կրցաւ Պարսիկներէն կուսակիցներ գտնել, որոնք զզուած էին վերջին խռովութիւններէն և ձեռնարկեց նոյն իսկ Պարսկաստանի թագաւորութեան հետապնդել։ Վերջին թագաւորներէն Ռուսթէմի դէմ ելաւ և սպաննեց զայն 1497'ին, և հետ զհետէ յաղթեց Ահմէտի, Էլվէնտի և Մուրատի, և 1499'ին Թաւրիզն ալ գրաւեց, և բոլոր Պարսկաստանը նուաճելով 1502'ին, Ասպահանի մէջ Շահնշահ հռչակուեցաւ (ՏՊէ. 353), և Սոֆիներու կամ Սէֆիներու հարստութեան հիմնադիրն եղաւ, որոնք երկուքուկէս դար յաջորդեցին Պարսից գահուն վրայ։ Այդ կերպով Էջմիածինն ալ Հայաստանի մեծ մասին հետ Սէֆիներու իշխանութեան ներքեւ մտաւ, որ աւելի նշանաւոր եղաւ բռնակալ տիրապետութեամբ քան շինարար իշխանութեամբ։ Երեւանեցին Սարգիսի 16'րդ տարին կը դնէ Շէյխօղլի որդի և Շէյխօֆօղլն թոռ Շահ Իսմայէլի թագաւորութիւնը, որ կը պատահէ Միւսայլ Սարգիսի կաթողիկոսութեան մեր տուած թուականին, այսինքն է 1484'ին (§ 1513), միայն ուղիղ չէ 1491'ին դնել Շահ Իսմայէլի թագաւորութիւնը (ՋԱՄ. 20), որ ճշդուած հաշուով տեղի ունեցած է 1499'ին (ՃՆՏ. 187)։ Պարսից թագաւորութեան կրած այդ մեծ փոփոխութիւնը իւր նշանակութիւնն ունեցաւ Հայ ազգին և կաթողիկոսութեան համար, և նորանոր տագնապներու դուռ բացաւ, միայն թէ ներքին պատերազմները, Պարսկաստանի մէջ շրջափակուեցան, և Հայաստանի վրայ չտարածուեցան։

ՍԱՐԳԻՍԻ ՏԵՒՈՂՈՒԹԻՒՆԸ

**1522.** Անեղծուածական ըլլալու չափ դժուար է Միւսայլ Սարգիսի կաթողիկոսութեան վերջաւորութիւնը ճշդել։ Դավրիժեցին, որ ընտրելագոյն աղբիւրն է, 1506'ին Սարգիսի հետ Եղիշէ և Ներսէս աթոռակիցները նշանակելէն ետքը, տասնամեայ ոստում մը կ'ընէ մինչեւ 1515, և այս թուականին կը նշանակէ պարզապէս Կաթողիկոս տէր Զաքարէ, ոչ վերոյիշեալ աթոռակիցներէն մէկը կրկնելով, և ոչ ալ Զաքարիայի նախապէս աթոռակից եղած ըլլալը յիշելով (ԴԱՎ. 337)։ Նորերէն իւրաքանչիւր ոք իր միտքին համաձայն ժամանակագրութիւն մը կազմած է, այդ դատարկը լեցնելու և շարայարեալ զաւազան մը կազմելու համար, քանի որ յայտնի է որ աթոռի տասնամեայ պարապութիւն տեղի ունեցած չէ, և ենթադրելի ալ չէ։ Ինչ որ ամէնուն կողմէ հաստատուն բռնուած է, Զաքարիայի 1515'ին կաթողիկոսանալն է. Դավրիժեցիին հետեւողութեամբ, թէպէտ Դավրիժեցին ոչ թէ սկզբնաւորութեան թուականը կու տայ, այլ նոյն թուականին այսպէս յիշատակութիւն մը գտած ըլլալը կը վկայէ, համաձայն իւր յայտնի ազդարարութեան (ԴԱՎ. 334)։ Դժուարութիւնը աւելցնող պարագայ մըն ալ այն տասնամեայ միջոցին համար մասնաւոր յիշատակարաններու չհանդիպելնիս է, որոնք կրնային մեզի կարեւոր լուսաբանութիւնն ընծայել։ Ջամչեան շարայարութիւն մը կը կազմէ դնելով 1467 Սարգիս Բ, 1490 Արիստակէս Գ, 1498 Թադէոս Ա, 1503 Եղիշէ Բ, և վերջապէս 1515 Զաքարիա Դ (ՋԱՄ. Գ. 509)։ Անոր հետեւած է սովորական ցուցակն ալ (ԺԱՄ. 635)։ Իսկ Երեւանեցին կը դնէ 1476 Սարգիս Գ, 1492 Արիստակէս Գ, 1499 Թադէոս Ա, 1504 Եղիշէ Բ, 1506 Ներսէս, և վերջապէս 1515 Զաքարիա Գ (ՋԱՄ. 20)։ Ալիշան անուններու խճողում մը կը կազմէ դնելով, 1467 Սարգիս Բ, 1475 Յովհաննէս Ը, 1477 Սարգիս Գ, 1486 Արիստակէս Գ, 1488 Յուսիկ Բ, 1499 Թադէոս Ա, 1504

*Եղիշէ Բ*, 1505 *Յովհաննէս Թ*, 1506 *Ներսէս Ե*, *և վերջապէս* 1515 *Զաքարիա Գ* (ԱՐԲ. 230)։ *Վերջերս Ջամինեան դրած է* 1468 *Սարգիս Բ*, 1476 *Յովհաննէս Է*, 1477 *Սարգիս Գ*, 1506 *Եղիշէ Բ*, *և մինչև* 1515*'ին Զաքարիա Բ* (ՉԱՄ. Բ. 227 Ե)։ *Այդ խուռն և անյարիր ենթադրութեանց մէջ առաջին դիտելիքնիս այս է, թէ Դավրիժեցիին յայտնի վկայութեամբ* 1506*'ին աթոռի վրայ կը գտնուի* Նոյն տէր Սարգիս (ԴԱՎ. 337), *ուստի մինչև այդ թուականին եղող բոլոր անունները պէտք է ցուցակի չմտնեն իբրև աթոռակիցներ, ինչպէս որ կանուխէն ալ բացատրեցինք, թէ ընդունելի եղողները* (§ 1518), *և թէ մեր տեսութեամբ անընդունելի երևցածները* (§ 1519)։ *Նոյնը կը հաստատուի շատ մը յիշատակարաններէ ալ, որոնք միջանկեալ տարիներու համար Սարգիսը իբր կաթողիկոս կը յիշեն, մինչև* 1506 *մարտ* 12 *օրն, ուր գրուած է* ի հայրապետութեան տեառն կաթողիկոսի տէր Սարգսի (ՏԱԾ. 55)։ *Այդ թուականէն յետոյ Սարգիսը յիշող՝ յիշատակարանի չենք հանդիպած, բայց կարենալ գտուիլը անհաւանական չենք կարծեր, քանի որ Սարգսի մահուան ալ յիշատակութիւնը չենք գտներ։ Նուիրակներու պատմութեան մէջ* (§ 1435), *ակնարկ մը կայ* 1506 *տարին*, ՄԷ երրոյ դոռմաքան, կաթողիկոսն եղեւ փոխման (ՀԱՅ. 589), *որ շատ մութ է, և չրաւեր Սարգիսը մեռած ըլլալու նոյն տարին, որ Դավրիժեցին իբր կենդանի կը յիշէ* Նոյն տէր Սարգիս *կաթողիկոսը* (ԴԱՎ. 337)։ *Բայց խնդիր է մինչև* 1506*'է* 1515 *տասնամեայն լրացնել։ Ենթադրութիւններէն մին է Սարգիսը* 1506*'ին վախճանած ըսելով, Եղիշէ Բ'ը, որ երիցագոյն աթոռակիցն է, բուն գահակալ անցընել մինչև* 1515։ *Այս դրութիւնը ընդունած է Ջամինեան, բայց մենք հիմ մը չենք տեսներ։ Երկրորդն է Զաքարիան* 1515*'էն առաջ բուն գահակալ դարձած ընդունիլ և տասնամեային մէջտեղերը որևիցէ տարի մը՝ դնել Սարգսի մահը և Զաքարիայի յաջորդելը։ Որչափ որ գիտենք տակաւին այդ դրութիւնը մէկէ մը առաջարկուած չէ, այլև ամէնքն ալ Զաքարիան անխախտ կը պահեն* 1515*'ին, և խնդրոյ նիւթ եղող տասնամեան կը լրացնեն մասամբ Եղիշէի և մասամբ Ներսէսի բուն գահակալութեամբ։*

**1523.** *Իսկ մեր կարծիքը եղած է, ոչ Եղիշէի և ոչ Ներսէսի բուն գահակալութիւնը ընդունիլ, այն մեծ պատճառով, որ յիշատակարաններու մէջ բնաւ չենք հանդիպիր այս երկու անուններուն իբրև բուն կաթողիկոս արձանագրուելուն, և ցորչափ որևէ այդպիսի յիշատակութիւն չտեսնանք՝ կամայական և քմահաճոյ կը կարծենք Եղիշէ կամ Ներսէս անունները ցուցակին անցնել, իբրև բուն գահակալ կաթողիկոսներ։ Ենթադրութիւնները ներեալ կ'ընդունինք, երբ գոնէ ամենափոքր ակնարկ մը զայն արդարացնէ, և կամ թէ ժամանակագրական պահանջ մը զայն անհրաժեշտ ցուցնէ։ Ներկայ պարագայիս մէջ ոչինչ կարգելու մեզ ենթադրել որ Սարգսի կեանքը* 1506*'էն անդին ալ շարունակած ըլլայ, և կամ Զաքարիա* 1515*'էն առաջ բուն գահակալութեան բարձրացած ըլլայ, վասնզի Դավրիժեցիին տուած թուականները*, ու Բե ընթեր կաթողիկոսացն Նոպեյոյ զառաջին ամ Նշանակեն, *այլ միայն կը ցուցնեն թէ* այն Բասէն *իշխանութեան վրայ և կենդանի կը գտնուէին* (ԴԱՎ. 331)։ *Եւ որովհետև ոչ մի նշան չունինք միջանկեալ տասնամեային որոշ մէկ տարւոյն մէջ Սարգիսը մեռած ըլլալու, կեղակարծ բան մը ենթադրած չըլլալու համար, մինչև* 1515 *կը յետաձգենք անոր մահը, մինչև որ նոր գտնուող յիշատակարաններ և նոր յիշատակութիւններ ստոյգը երևան բերեն, և որոշ կերպով հաստատուի* 1506-1515 *տասնամեային նկատմամբ ընդունուելիք իրականութիւնը, և փարատուի յիշատակութեանց չգտնուելէն յառաջ եկած մթին անստուգութիւնը։ Հետևաբար պիտի չկարենանք աւելի բան մը ըսել Միւսայլ Սարգսի մահուան նկատմամբ։ Միայն դիտել պիտի տանք թէ ժամանակագրական դժուարութեան չենք հանդիպիր ենթադրելով որ* 1476*'ին աթոռակից և* 1484*'ին գահակալ հռչակուող Սարգիսը, մինչև* 1515 *ապրած ըլլայ, որովհետև ութսնամեայ և աւելի տարիք ունեցող անձեր յաճախ տեսնուած են Հայաստանեայց կաթողիկոսներու շարքին մէջ։*

ՏԱՍՆԱՄԵԱՅ ՄԻՋՈՑ

**1524.** *Սոյն նորահաստատ կաթողիկոսութեան դէպքերը պատմեցինք մինչեւ Կարապետ Եւդոկիացիին կեանքին վերջը* (§1489), *որուն մահը տեղի ունեցաւ* 1477'*ին, ըստ նորագոյն հետազօտութեանց* (ՍԻՍ. 539), *թէպէտեւ երբեմն կը կարծուէր թէ շատ կանուխ վախճանած ըլլայ* 1449'*ին* (ՍԻՍ. 218)*։ Ըստ այսմ շատ երկար պաշտօնավարութեան միջոց չմնար, իւր երկու յաջորդներուն Ստեփանոս Սարաձորեցիի և Յովհաննէս Անտիոքացիի, վասնզի երրորդը Յովհաննէս Թլկուրանցին կաթողիկոսական աթոռ բարձրացած է* 1489'*ին* (ԹԼԿ. 5)*։ Սարաձոր անունով տեղ մը Կիլիկիոյ մէջ չգտնուելուն, կրնայ մտածուիլ թէ Կարնոյ Սարաձորէն եղած ըլլայ Ստեփանոս, և հանդիպմամբ Կիլիկիոյ աթոռին մէջ յառաջացած։ Իւր կաթողիկոսութիւնը կ'երկարաձգուի մինչեւ* 1488, *և հազիւ տարւոյ մը կարճատեւ միջոց կը տրուի Յովհաննէս Անտիոքացիին* (ՍԻՍ. 539)*։ Սարաձորեցիին վերագրուած է Էջմիածնի կաթողիկոսութիւնը խափանելու գաղափար մըն ալ, սակայն իբրեւ ժամանակ կը ցուցուի* 1449 *տարին* (ՉԱՄ. Գ. 491), *երբ ուղղուած հաշուով Կարապետ էր կաթողիկոսը, նոյնիսկ իւր առաջին տարիներու մէջ։ Ուստի հաւանականագոյն կ'երեւի Սարաձորեցիէն հեռացնել այսպիսի միտում մը, և Կարապետի վերագրել ոչ միայն Սիսի մէջ կաթողիկոսութիւն հաստատելու, այլ նոյնիսկ Էջմիածինը խափանելով նորէն Սիսը Ամենայն Հայոց աթոռ հռչակելու ջանքը։ Ստոյգ կերպով Սարաձորեցիին ժամանակը կ'իյնայ Սիսին Օսմանեան կայսրութեան ձեռք անցնիլը։ Մէհէմմէտ Բ Ֆաթիհի* 1481'*ին յաջորդած էր Պայազիտ Բ Վէլի, որ հօրը աշխարհակալութիւնները շատ աւելի ընդարձակեց թէ Եւրոպակողման մէջ Պոսնիոյ և Մոլտաւիոյ վրայ, և թէ Ասիակողմը Գարամանցոց և Եգիպտացոց վրայ։ Գարամանցիները նուաճեց* 1486'*ին և* 1487'*ին Եգիպտացիներէն քաղաքներ և բերդեր խլեց, բայց խաղաղ չկրցաւ նուաճել։ Սիսի աթոռին և Գարամանի ու Կիլիկիոյ գաւառներուն Օսմանեանց ներքեւ նուաճուելովը, տակաւ կը շատնար Օսմանեան հպատակ հայութեան թիւը, և Հայեր եւսքանդեւս կը կապուէին Օսմանեան շահերու հետ, քանի որ սուլտաններն ալ իբրեւ իրենց օգտակար և իրենց հաւատարիմ տարր մը կը նկատէին Հայերը։ Ստոյգ ալ, երբ շատ աւելի աղետալի էր Հայերուն կացութիւնը Թրքական և Պարսկական տիրապետութեանց ներքեւ, Հայեր շատ հաճելի կը տեսնէին Օսմանեան կայսրութեան ներքեւ քրիստոնէից համար կազմուած դիրքը, և Հայերուն ցուցուած յատուկ մտադրութիւնը, և այս պատճառով արեւելեան գաւառներէն շարունակեալ գաղթականութիւն մը կը յորդէր դէպ արեւմտեան գաւառներ, և հետզհետէ կը բազմանար Օսմանեան հայաբնակութիւնը, և կը զօրանար Կոստանդնուպոլսոյ Հայ պատրիարքութեան դիրքը։*

ՍՍՈՅ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐ

**1525.** *Սոյն կաթողիկոս Յովհաննէս Թլկուրանցիին վրայ խօսիլ ուզելով, պէտք է նախ դիտենք թէ բոլորովին տարօրինակ և անսովոր դէմք մըն է նա հայրապետական աթոռի վրայ։ Իւր կաթողիկոսական գործունէութենէն շատ բան չենք գիտեր, և կը հետեւցնենք թէ շատ բան ալ ըրած չէ, թէպէտեւ մինչեւ* 1525, *ամբողջ* 36 *տարի կաթողիկոսութիւն վարած է։ Բայց ուր եկեղեցական գործունէութեամբ աննշան կը մնայ, նշանաւոր անձ մը կը ներկայանայ իբր տաղասաց բանաստեղծ, բայց ոչ միայն իբր եկեղեցական երգերու յօրինող մը՝ Շնորհալիի կամ Նարեկացիի նմանողութեամբ, այլ կատարելապէս աշխարհային երգիչ մը, որ մարմնական սէրը, կնոջ գեղեցկութիւնը, աշխարհի զուարճութիւնները և կերուխումի վայելքները կը փառաբանէ զգայուն շեշտերով և եռանդուն ոգեւորութեամբ, և* Խե– Յ–վհ–ննէ– Թ––լկ––ր–նցի *անունով կը փակէ իւր տաղերը* (ԹԼԿ. 31-33)*։ Ոչ միայն տաճկերէն բառեր կը գործածէ յաճախ, այլ և ամբողջ տաճկերէն երգեր ալ գրած է* (ԹԼԿ. 24)*։ Սակայն այդ սիրահարական տաղերու հետ ունի կատարեալ հոգեւորական երգեր ալ, որք հարկաւ կեանքին վերջին մասին մէջ գրուած են, ինչպէս անոնցմէ մէկուն մէջ կ'ըսէ իրեն համար, թէ* Խօճ–

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԼԿՈՒՐԱՆՑԻ

Նաւուն փոքր լցեր (ԹԼԿ. 48)։ Նկատողութեան արժանի է, որ նոյն իսկ աշխարհային տողերու հետ հոգեւորական զգացումներ խառնուած են։ Ուստի մեզի ալ հաւանական կ'երեւի Կոստանեանցի կարծիքը, որ Թուլկուրանցիին իրեն համար՝ Դու սուրբ Կարապետի ծոցուն ու ծառան ես ըսելէն (ԹԼԿ. 39) կը հետեւցնէ, թէ նա ալ մէկն եղած է անոնցմէ, որ Մշոյ Ս. Կարապետի ուխտաւորութեամբ և եօթնամեայ պահեցողութեամբ աշուղ կամ ըմբիշ կամ լարախաղաց կը դառնային (ԹԼԿ. 7)։ Պիտի աւելցնենք ալ, թէ երիտասարդութիւնը սիրոյ և զուարճութեան նուիրելէ ետքը յանկարծական դէպքի մը առջեւ փոփոխուած և եկեղեցւոյ նուիրուած պիտի ըլլայ։ Եւ իրեն բնական աշխուժութեամբը՝ եկեղեցականութեան մէջ ալ աշխատասէր և գրաւիչ գործունէութիւն ցուցնելով, հետզհետէ բարձրացած և մինչեւ կաթողիկոսութիւն հասած կ'երեւի։ Այլ թէ Կիլիկիոյ աթոռը ինչ օգուտ քաղեց աշուղ կաթողիկոսէն, կամ թէ Թլկուրանցին ինչ արդիւնքներ ընծայեց Հայ եկեղեցւոյն, ինչպէս ըսինք, մեզի անծանօթ կը մնան, և չգոյութեան կասկածներ կը թելադրեն։

**ԱՂԹԱՄԱՐԻ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐ**

**1526**. Աղթամարի աթոռին վրայ խօսածատեննիս յիշեցինք Ստեփանոսի կաթողիկոսանալը 1464'ին (§ 1497), Էջմիածին արշաւելը 1467'ին, և ետ դառնալը 1468'ին (§ 1501), և աթոռի վրայ գտնուիլը 1477'ին, երբ Աջը Օծոպեցիին ձեռքով Էջմիածին դարձաւ (§ 1511)։ Յիշատակարաններ իւր օրով կը դնեն Աւտէրի եկեղեցւոյն շինութիւնը 1472'ին, և անոր անունը կը յիշուի մինչեւ 1487 (ՕՕ.ԲԻՋ. 1196), և այդ միջոցներուն իրեն յաջորդած է միեւնոյն Գուրջիբէգեանց ազգատոհմէն իւր եղբայրն Ներսէս, զոր մենք չուզեցինք Էջմիածնի աթոռակից Ներսէսի հետ շփոթել, հակառակ ոմանց կարծիքին (§ 1518)։ Ներսէս կարճատեւ պաշտօնավարութիւն ունեցած է, նոյնպէս անոր յաջորդող Զաքարիան ալ, որ բոլոր Աղթամարայ կաթողիկոսներուն նման յորմէ տորոյ և է ցեղէն Ռէժ Բոզոսորէն Գոզնոյ եղած կ'ըսուին։ Աղթամարցի յիշատակագիր մը որ 1495'ին կը գրէ, յանցեալ ամին այսինքն 1494'ին կը դնէ Զաքարիայի մահը, և կաթողիկոս կը ճանչնայ Ստեփանոս մը (ԹՈՐ. Բ. 447), որ 1495'ին ալ յիշուած է (ԹՈՐ. Բ. 276), բայց 1496'ին տէր Աստմ (ԹՈՐ. Բ. 426) կամ տէր Ադամ (ՕՕ.ԲԻՋ. 1197) է Աղթամարի կաթողիկոսը։ Այս թուականէն մինչեւ 1542, որ է ըսել 46 տարիներու միջոց մը, անստոյգ են կաթողիկոսներու շարքն ալ, աթոռին կացութիւնն ալ։ Հաւաքարանը այդ միջոցին համար, նախ կը յիշէ Գրիգոր մը, որ 1509'է մինչեւ 1534 պաշտօնավարած կ'ըսուի, և իրեն յաջորդ կը նշանակուին Եղիազար և Պաղտասար և Ղազար, առանց կարենալու շարայարեալ յաջորդութիւննին հաստատել, և թերեւս պատահական պարապութիւններ ալ տեղի ունեցած են այդ միջոցին։ Այդ պարագաները կը հաւաստեն Աղթամարի շրջանակին մէջ ալ տիրող անկումը, ուր չկային այլեւս յաջորդներ այն քիչ ու շատ ուսումնական անձերու, որոնք այդ յիսնամեայ միջոցին սկիզբները կ'ապրէին, ինչպէս են Յովհաննէս արքեպիսկոպոս Ֆերոզ ողուերդ, տէր Գրիգոր Աթարբէգեանց տորոսոծոբան և հոխտոր, տէր Մկրտիչ բոզոսնոցետ, և տէր Թումա Մինասեանց ճէլնոտոյ (ՕՕ. ԲԻՋ. 1196)։ Այդ անկումին իբր պատճառ կրնանք նկատել, դարուն վրայ տիրող տխուր ազդեցութիւնը, բայց յատկապէս ալ Աղթամարի կողմերը ասպարէզ էին Աքքօյունլուներու և Գարաքօյունլուներու անդադար պատերազմներուն, և վերջէն Շահ Իսմայէլի ռազմական ձեռնարկներուն։ Անոր Աղթամարի մէջ գտած ապաստարանը (§ 1521), կ'երեւի թէ ոչ մի երախտագիտական զգացում չյուզեց նոր աշխարհակալին սրտին մէջ։ Երուսաղէմի և Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռներուն մէջ նշանաւոր եղելութիւններ չեն յիշուիր, և առաջիկային կը թողունք անոնց մասին խօսիլ։

**1527**. Պէտք չէ անյիշատակ թողուլ նշանաւոր դիպուած մը, որ այս միջոցին կը պատկանի, ինչպէս է առաջին անգամ կատարուած հայերէն տպագրութիւնը։ Տպագրութեան գիւտը տեղի ունեցաւ Գերմանիոյ Մոգունտիա (Mainz) քաղաքը 1455'ին,

Յովհաննէս Գուտէնբերգ (Gutenberg) համեստ աշխատաւորի մը ձեռքով, և այդ թուականէն 57 տարի ետքը, 1512'ին հայերէն Պարզատումար մը հրատարակուեցաւ, ոչ ևս գրչագիր, այլ առաջին տպագիր գիրք մը, ըլլայ իսկ ոչ չարժական տառերով, այլ միակտուր կաղապարով տպագրուած։ Վասն զի հաստատատիպներ և պատկերներ ալ տպագրութենէ օտար չեն, թէպէտեւ միակտուր փորագրութեան ենթագրութիւնը հիմնաբար կը հերքուի տպագրեալ Պարզատումարին բուն օրինակը զննողներէն։ Առաջին տպուած գիրքին յաջորդեցին Պատարագատետր, Ուրբաթագիրք, Տաղարան և Աղթարք (ԼԷՕ. 14), որոնց հետ Սաղմոս մըն ալ (ՕԶ ԱՄՍ. 325)։ Անոնցմէ ոմանք 1513 թուական կը կրեն, և ոմանք առանց յիշատակարանի են (ՏԻՊ. 37)։ Այդ կենսական ձեռնարկը տեղի ունեցաւ հայաբնակ երկրէ հեռու և հայազգի գործունէութեան սահմաններէն դուրս, Իտալիոյ Վենետիկ քաղաքը, որ այն ատեն կրնար համարուիլ բոլոր աշխարհի մէջ ամէնէն յառաջացեալ և զարգացեալ քաղաքը, թէ առեւտրական ճարտարութեան և թէ ուսումնական լուսաւորութեան տեսակէտէն։ Չունինք ստոյգ տեղեկութիւն մը, թէ որչափ և որպիսի մասնակցութիւն ունեցան Հայեր այդ կենսական ձեռնարկին մէջ, կամ թէ լոկ իտալական չահագործումի արդիւնք եղաւ Հայերուն համար դիւրագնոյ գիրք պատրաստելը։ Անծանօթ և Մեղապարտ Յակոբի մը անունը միայն կայ 1513'ի տպագրութեանց մէջ, (ԼԷՕ. 15), իբր Գրող յիշուած, բայց ոչ ով ըլլալը, և ոչ ալ տպագրութեան տէրն կամ բարերարն ըլլալը գիտենք։ Ժամանակին հոգեւորական իշխանութիւններէն ոչ Էջմիածին, ոչ Սիս, և ոչ Կոստանդնուպոլիս չեն յիշուիր, որ գոնէ ազգային շարժումի մը հետքը տեսնայինք այդ ձեռնարկին մէջ։ Տպագրեալ Տաղարանը կը պարունակէ բաւական թուով Յովհաննէս Թլկուրանցիի երգերը (§ 1525), բայց չենք գիտեր թէ ինչչափ գործակցութիւն ունեցաւ Թլկուրանցին իւր կաթողիկոսութեան 24'րդ տարին լոյս ընծայուած գիրքին համար (ԼԷՕ. 22), բայց միշտ բախտաւոր եղած է իւր կենդանութեան իսկ իւր երգերը տպագրուած տեսնելով։ Ամէն առթի մէջ Հայ մտքի զարգացման նպաստաւոր փաստ մըն է արեւելքի ազգերուն մէջէն յառաջընթաց գտնուիլը, ըլլայ իսկ որ օտարազգիներ նախաձեռնարկ եղած ըլլան, վասնզի ամէն առթի մէջ Հայ տարրին մէջ պէտք էր սպառուէին Հայ տառերով մամուլին ներքեւէն անցնող գիրքերը։ Քաղցր է ինձ յիշել, որ այս տողերը խմբագրած ժամուս, 1912 յունուար 17-30 —ճիշդ 400 տարիներ —կը լրանան այդ նշանակաւոր նորութենէն, և Հայ տպագրութեան չորրորդ դարադարձը բոլոր Հայերուն զգացումները կը յուզէ։ Ուրիշ ժամանակակից նորութիւն մըն ալ Նոր Աշխարհի գիւտն է, զոր Քրիստափոր Կոլոմբոս (Cristoforo Colombo) Գենուացին գտաւ 1492 հոկտեմբեր 12'ին, բայց Ամերիկոս Վեսպուչի (Amerigo Vespucci) Փլորենտիացին տուաւ անոր իւր անունը, շուրջ 1500'ին ըրած ուղեւորութեամբը և հրատարակած տեղեկագրութեամբը։ Այն ժամանակ և քանի դարեր ալ ետքը՝ Հայոց համար նշանակութիւն չունեցաւ Ամերիկան, սակայն ներկայ ժամանակիս այն ալ Հայ գաղթականութեան նշանաւոր հանգրուան մը եղաւ։

**1528.** Ժամանակակից դէպքերուն կարգին միշտ ուրոյն տեղ մը սովորութիւն ըրինք տալ հաւատոյ նահատակներուն, որոնք ընդհանուր անկումի ժամանակիս մէջ՝ ուժգին ոգեւորութեան և հոգեկան զօրութեան արտայայտիչներ են և ազգային հոգին կը բարձրացնեն։ Մուրատ Վանեցի, որոյ անունը հայերէն Պարգեւ է ըսուած, Վանայ իշխան Սիւլէյմանէ ուրացութեան կը հաւիրուի, իւր հօրը տաճկացած ըլլալուն համար, սակայն իւր դիմադրելուն և քրիստոնէութիւնը փառաբանելուն վրայ՝ սրով կը վիրաւորուի, և աքացի ու բռնցի հարուածուելով քաղաքէն դուրս կը քաշկռտուի և քարկոծմամբ կը նահատակուի, իսկ մարմինը կը թաղուի Ս. Պօղոս եկեղեցւոյ առջեւը։ Նահատակութեան օրը գրուած է 934 մարգաց 13, որ կը պատասխանէ 1485

Marginal headings: **ՀԱՅ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ** (beside §1527 text); **ՄՈՒՐԱՏ ՎԱՆԵՑԻ** (beside §1528).

*սեպտեմբեր* 26'*ին*, *բայց Ցայսմաւուրքը հաստատուն տոմարով կը դնէ յունիս* 19'*ին*, *իսկ ուրիշ օրինակ մը մարտ* 30'*ին* (ՆՈՐ. 321)։

**ՄԻՐԱՔ ԹԱՒՐԻԶԵՑԻ**

**1529.** *Միրաք Թաւրիզեցի՝ Թաւրիզ մայրաքաղաքի հայաբնակութեան աւագը, Եաղուպի արքունիքին մէջ ազդեցութիւն վայելող, և մեծ հարստութեան տէր, մեծամեծ բարերարութիւններ կը կատարէր, բազմաթիւ գերիներ գնելով կ'ազատէր, և դրամի զօրութեամբ եկեղեցիներու չինութեան և քրիստոնէից պաշտպանութեան շնորհներ կը ստանար, այնպէս որ Տաճիկներու մեծամեծները նախանձոտ թշնամութիւն մը ունէին Միրաքի դէմ։ Ասոնց մէջէն Մէհտի անուն մէկ մը, որ Եաղուպէ թոյլտուութիւն ունէր, որ «ղումնոյն ղըր ինչը և օրտացէ, չամ էօր եղէցէ», իւր ընկերներով կը խորհրդակցէր չարունակ Միրաքը մէջտեղէն վերցնելու, և վերջնական որոշման կը յանգին 1486 մարտ 22'ին։ Միւս օր, որ աւագ հինգշաբթի էր, Միրաք ըստ օրինի խոստովանած և հաղորդուած էր, երբ ուրբաթի կէսօրին Մէհտի իւր փառաւորութեամբ Միրաքի կու գայ, խօսքէ խօսք անցնելով ուրացութիւն կ'առաջարկէ, Միրաքի մերժելուն կը զայրանայ, և երբ թէ Միրաք իրենց օրէնքը հայհոյած ըլլայ, նոյնանեղ կը զարնէ կը մեռցնէ, և գլուխը կտրելով յաղթանակաւ մինչև թագաւորական պալատ կը տանի։ Տաճիկ բազմութիւնը կը խուժէ քանդել Հայոց եկեղեցին, զոր Միրաք շինել տուած էր։ Հայեր Եաղուպի կը դիմեն, որ Միրաքի սպանութեանը վրայ ցաւելով, Տաճիկ բազմութիւր ցրուել կու տայ և Մէհտին դատելով կը հրամայէ սպաննել։ Միրաքի մարմինը պատուով կը թաղուի, մինչ Մէհտիինը բացին կը նետուի, ինչ որ Տաճիկները կը վշտացնէ, և Դաւուտ կամ Թասըմ մեծ դատաւորը գլուխ կը կանգնի, անոր փառաւոր թաղում տալու։ Բայց Եաղուպ այդ ձեռնարկն ալ իրեն անարգանք նկատելով, Թասիմն ալ մեռցնել կու տայ, և գլխաւոր գործակիցներն ալ ձաղանքի ենթարկել եաքը սպաննել կու տայ։ Այդ դէպքէն քիչ ետքն է Եաղուպի ալ դեղակուր սպանութիւնը* (§ 1521)։ *Միրաքի սպանութիւնը տեղի ունեցած է* 1486 *մարտ* 24 *աւագ ուրբաթի խորհրդաւոր օրուան ցերեկը, և թաղումը յաջորդ առտուն՝ աւագ շաբաթ օրը* (ՆՈՐ. 328)։

**ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ԿԱՖԱՑԻ**

**1530** *Աստուածատուր կամ Բողտան Կաֆացի, «մի քոյէ յոմ ղարմանուն երիտասարդ և հօրն մըն օրդէն», Կաֆայի այլազգիներուն աչքին զարկած էր, որ կ'ուզէին զայն իրենց կամքին հնազանդեցնել։ Ուստի սուտ դրպարտութեամբ դատաւորին մատնեցին, թէ «Բօղտան չէլէպի եհան», և չարաչար տանջելէ ետքը թող տուին, իբրև թէ իրեն մտածելու առեն թողած ըլլան։ Քիչ օր ետքը նորէն առին հօրը տունէն, և հարուածներով և եղէգներով ու կրակով տանջելէ ետքը, կրկին հօրը տունը բերին, և «ողորմելի ծեր ծընողին գառն լացուցին»։ Երրորդ անգամ իբրև թէ Աստուածատուր հաւանած ըլլայ, թլփատման գործողութիւն պատրաստուեցաւ, այլ նահատակին ուժգին բողոքելուն վրայ, մահուան վճիռ առին դատաւորէն, և խաչի փաթթելով «է հօր ընկեցին»։ Նահատակութեան թուականը բռնուած է* 1488 *տարին* (ՆՈՐ. 331), *բայց ամսաթիւը չէ յիշուած և ոչ ալ տօնական պատշաճը։ Մերձաւոր է ժամանակով Սուլթանշահի որդի Թորոս Հռոմկլայեցիի նահատակութիւնը* 1494 *օգոստոս* 1'*ին*, *սակայն պարագաները չեն պատմուած* (ՁԱՄ. Գ. 515)։

**ՇՆՈՐՀԱՒՈՐ ԽԱՑԻԿՑԻ**

**1531.** *Միւենոյն* 1494 *տարին հանդիպեցաւ Շնորհաւոր կնոջ նահատակութիւնը* (ՁԱՔ. Բ. 125), *որ Շնորփոր ալ գրուած է* (ՅԱՑ. 148)։ *Ամուսնացեալ կին մըն էր, արդէն այրիացեալ, «յերկրէն Մարաց»* (ՁԱՔ. Բ. 125), *և կը բնակէր Բաբերդի վերին Խայիկ գիւղը* (ՆՈՐ. 333), *ուր Քուրդ մը սեւէն ինկած էր զայն իրեն չահիլ և «դառընկէլ ընդ նմա»։ Շնորհաւորի դիմադարձութիւնները չարունակեցին, մինչև որ անգամ մը քուրդը կնոջ «է փործ էօր գացած» միջոցին՝ կ'ուզէ զայն բռնադատել, և «եղեւ ցնեաս աս օյէն նորա, տուրէր աս ինքն», որուն վրայ Շնորհաւորի եղբայրը՝ քրոջը*

պաշտպանութեան համնելով Քուրդը կը սպաննէ և կը փախչի։ Շնորհաւոր կը բռնուի, և Բաբերդի ամիրային առջեւ կը հանուի, ուր սպանութիւնը իւր վրան առնելով, կ'ըսէ թէ Քուրդը շուռ-բեռն կամք տանել (ՋԱՔ. Բ. 126)։ Ասոր վրայ ուրացութեան կը հրաւիրուի իբր ազատութեան պայման, և յանձն չառնելուն վրայ ուրախ-ուղ խորովեցին Շնորհաւորը և նահատակեցին։ Մահը տեղի ունեցած է 1494'ին, և յիշատակը Յայսմաւուրքի մէջ դրուած է հոկտեմբեր 31'ին (ՅԱՅ. 149), որ նոյն տարի կը համդիպէր Գիւտխաչի ուրբաթին։

**1532.** Յովհաննէս Դրախտիկցի արեգային նահատակութիւնն ալ յիշուած է յիշատակարանի մը մէջ 1500'ին (ՍԻՍ. 76), այլ պարագաները պատմուած չեն։ Սոյն միջոցին նահատակուած է Աւետիք Դրիճեցի

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՒ ԱՒԵՏԻՔ

արեղան ալ, որ գովուած է իբրեւ փիլիսոփայ, քաղցրաձայն, գրագիր և պատկերահան (ՆՈՐ. 347)։ Սպանութիւնը կատարած են Թաթար խանի զինուորները, ի վերայ ճանապարհին Ս. Նշանի վանիցն (ՆՈՐ. 346), որ է Կաֆայի մօտ՝ Խրիմու Ս. Խաչ վանքը, իսկ մանրամասնութիւնք կը պակսին Յովհաննէս Սեբաստացիի տաղին մէջ։ Թուական պիտի ընդունուի 1509 դեկտեմբեր 11, երեքշաբթի օր (ՆՈՐ. 349), Ս. Յակոբայ պահոց չորեքշաբթուն։

# Տ. ԶԱՔԱՐԻԱ Բ. ՎԱՂԱՐՇԱՊԱՏԵՑԻ

**1533.** Զաքարիայի անունը առաջին անգամ կը յիշէ Դավրիժեցին 1515'ին, իբր միակ և միահեծան հայ-

ՅԱՋՈՐԴԵԼՈՒՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ

րապետ, գրելով հոգեւոր տէր Զաքարիա, բայց մենք արդէն ըսինք թէ հաւանական է աւելի կանուխէն սկսիլ անոր կաթողիկոսութիւնը (1523)։ Չենք կարծեր ընաւ որ Զաքարիա առանց աթոռակից ըլլալու ուղղակի գահակալ կաթողիկոս ընտրուած ըլլայ։ Աթոռակցութեան սովորութիւնը օրէնքի ձեւ առած ըլլալու չափ արմատացած էր, և եթէ բացառիկ բան մը համդիպած ըլլար, անշուշտ յիշուած կ'ըլլար։ Այլ թէ երբ Զաքարիա աթոռակցութեան կոչուեցաւ, որոշ յիշատակութիւն չենք գտներ։ Անորոշ ակնարկ մը կը գտնենք յիշատակարանի մը մէջ. Յիշեցէք զ. . . . եան Զաքարիա, որ ընտրեալ Հայոց Նոր շինեաց է յանօրէն ասորեստանեաց, և շինեցէք աղօթեաց Աստուծոյ տեսչութեամբն և ջանիւ խորոզն։ Թուականն է 1506. (ԹՈՐ. Բ. 253)։ Մաշուած գիրերը կընան լրացուիլ թէ Հայրապետ և թէ հայրապետ բառերով, սակայն վերագրուած գործը, որ է բոլոր Հայոց եկեղեցիները ազատել, ընդարձակ ձեռնարկ մը ըլլալուն, աւելի կը միտինք հայրապետ կարծել յիշեալ Զաքարիան, քան վարդապետ, մանաւանդ որ նոյն տեղ առանձինն յիշուած է տեղւոյն, այսինքն Լիմին առաջնորդը տէր Յովհաննէս։ Այդ խօսքը Աղթամարի վերջին Զաքարիա կաթողիկոսին ալ չյարմարիր, քանի որ նա 1494'ին վախճանած էր (§ 1526), և անա թէ ինչպէս կը համնինք տէր Զաքարիան 1506'էն կաթողիկոս ճանչնալ, գոնէ իբրեւ աթոռակից։ Բուն գահակալութիւնը հաւանական ըսինք 1515'է առաջ դնել, թէպէտ չենք կրնար վկայութեամբ հաստատել։ Ըսինք ալ որ փաստ մը չկայ Եղիշէ Բ և Ներսէս աթոռակիցները գահակալութեան բարձրացնելու (§ 1522), և եթէ Սարգիս Միւսայլէ ետքը Զաքարիան կ'ընդունինք իբր բուն գահակալ, պէտք է ենթադրել թէ Սարգիսէ առաջ մեռած էին Եղիշէ և Ներսէս աթոռակիցները, և անոնց տեղ աթոռակցութեան կոչուած էր Զաքարիա։ Այս է մեր կարծիքը, և պէտք գտեցինք մեր կարծիքին հիմերն ալ յստակօրէն առջեւ դնել։ Սոյն Զաքարիան չասեր Գ կը հաշուեն, թուահամարի անցընելով Զաքարիա Աղթամարցին, զոր մենք իբր հակաթոռ

նկատեցինք և թուահամարի անցընելը անպատշաճ դատեցինք (§ 1492), ուստի մեր թուահամարով այդ Զաքարիային կը պատկանի Զաքարիա Բ կոչումը։ Իսկ Վաղարշապատեցի մակդիրը կուտանք առ ի չգոյէ որոշ տեղեկութեան մը իր ծննդավայրին և պաշտօնատեղւոյն վրայ։ Գործերուն ընթացքն ալ կը ցուցնէ թէ հայրապետական աթոռը և հայրապետութիւնը, թէ ոչ ժառանգական, գոնէ սեփական իրաւունք մը դարձած էր Էջմիածնի միաբանութեան խումբին և Վաղարշապատի շրջանակին, որոնք իրենց անձնական շահին հետ, գոնէ Ամենայն Հայոց հայրապետական աթոռը անխափան պահելու և շարունակելու օգուտը ընծայեցին։

**1534**. Երբոր Զաքարիա կաթողիկոսական գահակալութեան բարձրացաւ 1515'ին, կամ թէ այդ թուականէն ալ առաջ, երկիրը անհագին շփոթութեանց մատնուած էր,

ԵՐՈՒՍԱՂԷՄ ԵՒ ՍԵԼԻՄ

երկու հզօր վեհապետներու պատերազմներուն երեսէն, որոնք էին Պարսից շահ Իսմայէլը և Օսմանեանց սուլտան Սելիմը։ Սելիմ թէպէտ իւր հօր Պայազիտի անդրանիկը չէր, բայց Ենիչէրիներու պաշտպանութեամբ յաջորդ նշանակուեցաւ, 1512'ին։ Պայազիտ Բ իւր որդիներն ու թոռները կուսակալութեանց գլուխ անցուցած էր, որով փառասէր ձգտումներ և մրցակից հակառակութիւններ տեղի ունեցան, և Սելիմ հետզհետէ իւր փառասիրութիւնը ընդարձակելով, իւր հայրը հրաժարելու և զինքն յաջորդ հռչակելու ստիպեց, և հրաժարելուն երրորդ օրը Պայազիտ մեռաւ և ամէնուն համոզումը եղաւ թէ Սելիմ գէօյը եէր եօլան (ՍԱՄ. 175), որ և յաջորդաբար եղբայրները ու եղբօրորդիներն ալ սպաննել տուաւ, իւր ապահովութեան համար, և Եավուզ կամ Անողոք մակդիր անունը ստացաւ։ Շրջակայ թագաւորներէն Իսմայէլ միայն Սելիմը չշնորհաւորեց, և Սելիմ 40,000 Շիի Իսլամներ, այսինքն Պարսիկներ կամ Պարսից դաւանակիցներ կոտորել տուաւ, որուն վրայ Իսմայէլ պատերազմ բացաւ, և Սելիմի յարձակումներուն առջեւ երկիրը աւերեց որ պաշար չգտնայ։ Սակայն մէկտեղ Չալտրանի պատերազմին մէջ Սելիմ յաղթական եղաւ 1514 օգոստոս 23'ին, և Իսմայէլ վիրաւոր, Թաւրիզի մէջ ալ ապահով չըլլալով, աւելի ներքին գաւառներ ապաւինեցաւ։ Բայց խնդրոյն ետ դարձաւ, երբոր Սելիմի բանակը Պարսիկ սահմաններէն քաշուեցաւ, Օսմանեան կայսրութեան կցելով Հայաստանի մի մասը, այսինքն Կարնոյ, Կամախու և Մշոյ գաւառները, սակայն Էջմիածին և արեւելեան գաւառներ միշտ Իսմայէլի մնացին, որ դէպ ի Վրաստան և Կովկաս աւելի ընդարձակեց իւր տիրապետութիւնը։ Սելիմ նոր արշաւանքներ կազմեց դէպի հարաւ, 1515'ին Ասորիքի, 1516'ին Միջագետքի, և 1517'ին Եգիպտոսի տիրեց, և 1517 ապրիլ 13'ին, Եգիպտացւոց վերջին սուլտանը Թուման կախաղանի վրայ սպանուեցաւ, և այդ օրէն խալիֆայութեան, այսինքն իսլամութեան Մարգարէին յաջորդութեան իրաւունքը Եգիպտացիներէն Օսմանցիներուն անցաւ, և Արաբացի տարրը զրկուեցաւ իր դարաւոր իրաւունքէն, որ Թուրք տարրին փոխանցուեցաւ։ Այս պարագան աւելի փառաւորեց Օսմանեան կայսրութիւնը, որովհետեւ Սելիմ Մէքքէի և Մէտինէի և բոլոր Արաբիոյ ալ տէրը հռչակուեցաւ, կամ ինչպէս պաշտօնապէս կը կոչուէր սուրբ տեղուոյներու ծառայն ու պաշտպանն եղաւ։ Եգիպտոսէ դարձին Երուսաղէմ ալ մտաւ յաղթանակով, և տեղւոյն քրիստոնեաներուն հպատակութիւնը ընդունեցաւ։ Հայոց պատրիարքն էր Սարգիս, որ Յովհաննէս Թաւրիզի (§ 1506) երրորդ յաջորդն էր Մարտիրոսէ և Պետրոսէ ետքը, և 1507'ին աթոռ բարձրացած էր (ԲԱՌ. 51)։ Սարգիս փութաց նոր աշխարհակալին վաւերացնել տալ Հայոց ազգին սեփականութիւնները, և ներկայելով Էօմէրի և Սալահէտտինի և Եգիպտոսի սուլտաններուն հրովարտակները՝ անոնց հաստատութիւնն ուզեց, և Սելիմ նոր մը տուաւ, որուն մէջ յանկանէ անուանէ յիշուած էր գէանօրայս եւ գէօ-ձինս փնըրբինական սուրբ թեղչող եւ գէրասանս գուրըէողէն։ Սելիմի հրովարտակը առաջինն ու հինն է Օսմանեան վեհապետներէն Հայերուն տրուած վաւերագիրներուն (ԱՍՏ. Ա. 248)։ Հայերը այդ առթիւ ոչ միայն իրենց ստացութիւնները ապահովեցին, այլև պաշտ-

*պանեցին Լատիններուն սեփականութիւնները, երբ Սելիմ լսելով Լատինայ անթիւ ոսկի և գանձս բազումս ունենալը, և ուզելով տիրանալ, անոնց եկեղեցականները բանտարկել հրամայեց, ուր և մնացին 29 ամիս, հազիւ ողեպահիկ մնունդ ստանալով, ու բազումք մեռան ի քաղցոյ և ի ցրտոյ պանդխտաց* (ԱՍՏ. Ա. 249)։

**1535**. *Սելիմի և Իսմայէլի Հայաստանի հողին վրայ մղած պատերազմները աղետալի եղան Հայ տարրին համար, գլխաւորապէս Իսմայէլի հրամայած աւերածներով* (§ 1534), *և*

**ԶԱՔԱՐԻԱՅԻ ՄԱՀԸ**

*այս նեղութիւնները անշուշտ Էջմիածնի և Զաքարիայի վրայ ալ ծանրացան։ Որչափ և Դավրիժեցին յայտնի նշանակած չըլլայ, հնար չէ ենթադրել որ Զաքարիա առանց աթոռակիցի մնացած ըլլայ, և որովհետև ինքն Սարգիսի աթոռակիցներուն վերջինն էր, ուստի մինակ չմնալու համար, անշուշտ իւր կաթողիկոսութեան սկիզբը և ըստ սովորական ըմբռնման 1515'ին, իրեն աթոռակից մը առաւ, որ եղաւ նորէն Սարգիս մը, Սարգիս Դ թուահամարի կարգով։ Այդ Սարգիսի համար Ոսկեան կը գրէ թէ 1496'էն Վրաստան կը գտնուէր, որ ըսել է թէ Սարգիս Գ'ի օրէն Վրաստանի առաջնորդ էր, այլ կ'երևի թէ թուատառի սխալ մը սպրդած է, ուր կը գրէ թէ մինչև 1524 Վրաստան մնաց* (ԱՐՐ. 230), *վասն զի չենք կրնար ենթադրել որ աթոռակից նշանակուելէն ետքն ալ, և գահակալութեան բարձրացած ատենն ալ կարող եղած ըլլայ Էջմիածինէ դուրս ապրիլ։ Ոսկեանի տուած տեղեկութիւնը կը ծառայէ մեզի Վրաստանցի մակդիր անուանով որոշել այս Սարգիսը իւր համանուններէն։ Զաքարիայի գործունէութենէն բնաւ պատմելու յիշատակութիւն մը չենք գտներ, իսկ մահը կը ստիպուինք դնել 1520'ին, սա միակ պատճառով որ այդ թուականին աթոռակից Սարգիսը իբր բուն կաթողիկոս կը յիշատակուի Դավրիժեցիէն, և Զաքարիա այլևս չյիշուիր* (ԴԱՎ. 337)։ *Նոյն մեկնութեամբ վարուած է նաև Երևանեցիին 1520'ին դնելով Սարգիսի կաթողիկոսութիւնը* (ՋՍՄ. 20), *և այսպէս կը չարունակեն յետագաները ալ, որչափ և Դավրիժեցին բաւած ըլլայ, թէ սկզբնաւորութեան տարիները չեն իրեն նշանակած թուականները* (ԴԱՎ, 334)։

**1536**. *Երկու նոր վկաներու յիշատակներ ալ այդ միջոցին կ'իյնան։ Խաչատուր Կողբացի, ամուսնաւոր աշխարհական մը, բնակութեամբ և գործով Ամիթ կամ Տիարպէքիր հաստատուած էր։ Չենք գիտեր ինչ դրդմամբ երկու գինուորներ օր մը Խաչատուրի համար կը վկայեն թէ տաճկցած էր, մինչ Խաչատուր կը բողոքէր։ Բազմութիւնը կը խռնուի, ուրացութեան բռնադատութիւններ կը չարունակուին, սպառնալիքներ կ'ըլլան, քարեր կը կուտուին, բոցեր կը վառուին, բայց Խաչատուրի անյողդողդ մնալուն վրայ, կրակով սանջուելէ ետքը կը գլխատուի* (ՆՈՐ. 351), *1517 ապրիլ 7'ին, յաւուր Աւետեաց սուրբ Աստուածածնին* (ՆՈՐ. 352), *որ կ'իյնար աւագ երեքշաբթի օրը, զոր չենք իմանար ինչու հրատարակիչները ապրիլ 5 կիրակիի ուզած են վերածել* (ՆՈՐ. 352)։

**ԽԱՉԱՏՈՒՐ ԿՈՂԲԱՑԻ**

**1537**. *Աստուածատուր Խթայեցի, ընիկ Մողոլ, Խթայ կամ Ղատայի երկրէն, որ է այժմեան Պուխարա գաւառը* (ՍԻՍ. 531)։ *Մխիթար Բաղէշցի վաճառականը գնած էր զայն, որդայութեան առեն, երբոր այն երկիրները կը շրջէր, և իբրև զաւակ խնամած էր Բաղէշի մէջ, ուր տղան քրիստոնէութիւնը ընդունած և մկրտուած էր։ Աստուածատուրի ծագումը մէջտեղ ելաւ երբ 18 տարեկան եղած էր, և յուսեցաւ թէ որդի է Թուրքի* (ՆՈՐ. 355), *և այդ ամբաստանութեամբ ամիրային առջևը կանչուեցաւ։ Ոչ ողոքանք և ոչ սպառնալիք չկրցան խախտել Աստուածատուրի հաւատքը, և թէպէտ սովով և ծարաւով յոյժ տանջեցին, երկար գանակոծեցին, ձմեռ ատեն սառուցեալ գետնետեցին, թկնամէջը հուր վառեցին, ձեռքն ու ոտքը կրակի բռնեցին, տաքով մարմինը ծակոտեցին, և ոչ ինչ կարացին, սակայն չկրնալով զայն ուրացութեան հպատակեցնել, քարկոծմամբ*

**ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ԽԹԱՅԵՑԻ**

*նահատակեցին* 1519'*ին* (ՆՈՐ. 357)։ *Աղթամարցի Գրիգորիս կաթողիկոս, որ յառաջ տաղ մը գրած է, նահատակութեան օրը նշանակած չէ* (ՆՈՐ. 358)։

---

# Տ. ՍԱՐԳԻՍ Դ. ՎՐԱՍՏԱՆՑԻ

**ՅԱՋՈՐԴԵԼՈՒՆ ԹԱՐԱԳԱՆԵՐԸ**

**1538.** *Զաքարիայի յաջորդը եղած է Սարգիս, զոր Դավրիժեցին կը նշանակէ* 1520'*ին տէր Սարգիս, և* 1523'*ին նոյն տէր Սարգիս կոչմամբ, իսկ յաջորդ կաթողիկոսի անունը կը յերկարաձգէ մինչև* 1536 (ԴԱՎ. 337)։ *Ասկէ քաղելով ընդունուած է սոյն Սարգիսի կաթողիկոսութիւնը դնել* 1520'*էն* 1536, *բաս որում կը դնէ Երևանեցին ալ* (ՋԱՄ. 20)*. և պէտք է նոյն կերպով պահել, քանի որ ոչ մի տարբեր յիշատակութիւն չստիպեր զայն փոփոխել։ Համանուն Սարգիսներու իրարու քով հետևողութեամբ յաջորդելը, առիթ եղած է ոմանց անոնք նոյնացնելու, ինչպէս Բ և Գ Սարգիսներու վրայ յիշեցինք* (§ 1507), *և այս անգամ ալ Գ և Դ Սարգիսներու վրայ նոյնութեան կասկած մը կը յարուցանէ Ալիշան* (ԱՐՐ. 230), *սակայն հիմնական չերևիր իր կարծիքը։ Դավրիժեցին ճշգրտան է նոյն բառը աւելցնելու, երբ միևնոյն անձին անունը կը կրկնէ, և այդ յաւելուածը չունի Զաքարիայէ առաջ և ետքը եղող Սարգիսներու վրայ, և մենք պիտի չուզենք բաժնուիլ Դավրիժեցիին տեղեկութիւններէն։ Միւս կողմէն Սարգիս Գ'ը* 1476'*էն աթոռակից կաթողիկոս եղած գիտենք, և ներկայ Սարգիս Դ'ը մինչև* 1536 *շարունակած, և եթէ նոյն ըլլային* 60 *տարի շարունակ կաթողիկոսութիւն վարած անձ մը պիտի ունենայինք, որ հաւանական չէ, ենթադրելի չէ, և ըսուած ալ չէ, ինչ որ հընար չըսուէր, եթէ իրօք այսպիսի տարօրինակ պարագայ մը ճշմարտուած ըլլար։ Աւելցնենք ևս որ անմեկնելի կը մնայ, ծերացեալ կաթողիկոսի մը* 35 *տարի առանձնացած Վրաստանի մէջ ապրելէ ետքը, նորէն աթոռ դառնալով* 16 *տարի ևս պաշտօն վարելը, ինչ որ եղած պիտի ըլլար եթէ Գ և Դ Սարգիսները նոյնացնելու դրութիւնը ընդունուէր։ Հետևաբար պէտք է առանց պատմութիւնը բռնաբարելու Բ և Գ և Դ Սարգիսները իրարմէ զատել, զորս Աջատար և Միւսայլ և Վրաստանցի մակդիրներով որոշեցինք։ Դավրիժեցիէն նշանակուած չենք գտներ վերջին Սարգիսի հետ աթոռակից եղողի մը անունը, և թէպէտ այս միջոցին Էջմիածին առանց աթոռակիցի չէր մնար, սակայն անհաւանական չենք կարծեր ըսել, որ Սարգիս Վրաստանցին, Էջմիածնի միաբանութենէ հեռի ապրած անձ մը ըլլալով, պահ մը ուզած ըլլայ միայնակ պաշտօնավարել։ Սարգիսի գործունէութենէն ալ յառաջ բերելիք կէտ մը չունինք, դուրսէն աղէտք և արկածք, ներսէն տկարութիւն և շփոթութիւն, չէին ներեր որ Էջմիածնի գահակալները, ուզելով ալ, կարենային ձեռներէց և արդիւնաւոր գործունէութիւն մը ունենալ, և բոլոր արժանիքնին պէտք է ամփոփենք աթոռի գոյութիւնը պահպանելու և վերահաս վտանգները հեռացնելու ջանքերուն մէջ։*

**Կ. ՊՈԼԻՍ ԵՒ ՍԻՍ**

**1539.** *Կոստանդնուպոլսոյ մէջ սուլտան Սելիմ մեռած էր* 1520 *սեպտեմբեր* 22'*ին, և իրեն յաջորդած սուլտան Սիւլէյման Ա. Քանունի, այսինքն է Օրէնսդիր, Օսմանեան գահուն ամէնէն բարձր և հոյակապ վեհապետը։ Իր գահակալութիւնը սկսաւ գթութեան և արդարութեան գործերով, և ուղղելով հօրը բռնակալ անգթութիւնները,* 1521 *յունուար* 27'*ին զսպեց Ասորիքի ապստամբութիւնը, օգոստոս* 29'*ին Պելկրատը առաւ Հունգարացիներէն, և* 1522 *դեկտեմբեր* 25'*ին Հռոդոսը՝ ասպետներուն ձեռքէն, երբ Լատիններ անփոյթ էին Արևելքին օգնելու։ Փրանկիսկոս Ա Գաղղիոյ թա-*

գաւորը և Կարոլոս Ե Գերմանիոյ կայսրը իրենց ներքին գժտութիւններով կը զբաղէին, և Լեւոն Ժ պապ նորադանդութեան դէմ կը պայքարէր։ Այդ միջոցներուն, 1523'ին, կը մեռնէր Պարսից շահ Իսմայէլը, և իրեն կը յաջորդէր Թահմասպ կամ Թահմազ շահ, որուն մասին գովութեամբ կը խօսին մեր պատմիչները (ՁԱԲ. Ա. 10)։ Մեր նպատակը չէ Սուլէյմանի քաջութեանց շարքը պատմել, որ մինչեւ Վիէննա հասաւ իր բանակներով, թէպէտ 1529 հոկտեմբեր 14'ին, ձմեռն ալ վրայ հասնելուն պարտաւորուեցաւ պաշարումը վերցնել և ետ դառնալ։ Մեր պատմութեան կարգին համար յիշենք միայն, 1526'ին վերջերը, Կիլիկիոյ Իչիլի գաւառին գրաւուիլը, և 1527'ին Գարամանցիներու ապստամբութեան Օսմանցիներէ ընկճուիլը, բայց Սիս, Տարսոն, Ադանա և ուրիշ Կիլիկիոյ քաղաքներ մեծամեծ վնասներ կրեցին, և Կիլիկիոյ Հայութիւնը մասնակից եղաւ պատերազմի աղէտներուն, որք վայրագօրէն մղուեցան երկու կողմերէն։ Թլկուրանցի Յովհաննէս Բ կաթողիկոսը 1525'ին մեռած ըլլալով (§ 1525), իր յաջորդ Յովհաննէս Գ Քիլիսցիին օրերուն կ'իյնան այդ պատերազմական աղէտները։ Իսկ Կոստանդնուպոլսոյ մէջ, Նիկողայոսի (§1509) պատրիարքութիւնը վերջացաւ 1489'ին, հարկաւ իր մահուամբ, վասնզի այն ատեն տակաւին չէր ճշմարտուեր առաջիկային սովորական դարձած փոփոխականութիւնը։ Իրեն յաջորդեցին Կարապետ 1489'է 1509, և Մարտիրոս մինչեւ 1526, որոնց գործերը անծանօթ մնացած են յիշատակներու պակասութեամբ։ Մարտիրոսի օրերուն կ'իյնայ Կոստանդնուպոլսոյ հայաբնակութեան մէջ Թաւրիզեցի՝ կամ ընդհանրապէս Պարսկաստանցի տարր մըն ալ աւելնալը, զորս Սէլիմ փոխադրեց 1514'ին Շահ Իսմայէլի վրայ տարած յաղթութենէ ետեւ (§ 1534), և որոնց մէջ շատ էին արհեստաւոր և արհեստագէտ Հայազգիներ (ՁԱՄ. Գ. 511)։ Մարտիրոսէ ետքը 1526'ին Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան անցաւ Գրիգոր Վաղարշապատցի, Զաքարիա Բ կաթողիկոսի եղբօրորդին։ Գրիգորի ծագումը կը հաստատէ կանուխէն դիտել տրուած կէտը թէ Կոստանդնուպոլսոյ աթոռը, որչափ ալ առաջները Կիլիկիոյ կաթողիկոսութեան հետ յարաբերութեան մէջ կը գտնուէր, սակայն հետզհետէ թէ արեւելցի հայաբնակութեան շատնալովը, և թէ Էջմիածինի վիճակներէն լաւ մաս մը Օսմանեան կայսրութեան կցուելովը, Էջմիածինի աթոռին հետ յարաբերութիւններ ընդարձակուեցան, և հետզհետէ անոր իրաւասութեան հետ կապուեցաւ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութիւնը (§ 1509)։ Այդ տեսակէտէն շատ նշանակալից է Վաղարշապատցի և կաթողիկոսի եղբօրորդի և Էջմիածինի միաբան եպիսկոպոսի մը պատրիարքութեան ընտրուիլը։

ՍԱՐԳԻՍԻ ՄԱՀԸ

**1540**. Պատերազմի աղէտները Հայաստանի մէջ նորոգուեցան Սարգիսի վերջին տարիներուն։ Սուլտան Սուլէյման փութաց արեւմուտքի կողմէն պատերազմները վերջացնել, որ Պարսիկներուն հետ նորոգէ, վասնզի մինչ Զուլֆիքար խան՝ Պաղտատի պարսիկ կուսակալը՝ կը խոստանար Օսմանեանց յանձնել քաղաքը, Շէրիֆ պէյ՝ Բաղէշի Օսմանեան կուսակալը՝ իր քաղաքը Պարսիկներուն կը յանձնէր։ Իպրահիմ փաշա, Սուլէյմանի սիրելի և կարող մեծ եպարքոսը 1572'ին ճամբայ ելաւ հզօր բանակով, Հալէպ ձմերեց, գարնան հետզհետէ գրաւեց Ախլաթ, Արճէշ, Ալճավազ, Վան և Ուրմիա, իսկ 1533 յուլիս 13'ին Թավրիզ մտաւ։ Սուլտան Սուլէյման, որ 1533 յունիս 13'ին Կոստանդնուպոլիսէ մեկնած էր, Նիկիա, Կոնիա, Ակշեհիր, Գոնիա, Էրզրում, և Արճէշ հանդիպելով, Թավրիզ մտաւ սեպտեմբեր 20'ին, ուսկից Պաղտատի վրայ քալեց, և գրաւեց դեկտեմբեր 31'ին։ Բաւական երկար մնաց այն տեղ աշխարհակալութիւնը ընդարձակելու և կառավարութիւնը կարգադրելու համար, և հազիւ 1534 օգոստոս 2'ին մեկնեցաւ դէպի Թաւրիզ, և 1535 յունուարին մայրաքաղաք դարձաւ։ Այդ պատերազմներուն հետեւանօք նոր գաւառներ և Հայութենէ նոր մաս մը Օսմանեանց անցան, այլ Էջմիածին միշտ Պարսիկներուն ձեռքը մնաց։ Յիշենք անցողակի որ 1535 փետրուարին հաստատուեցաւ սուլտան Սուլէյմանի և

Գաղղիոյ թագաւոր Փրանկիսկոսի միջեւ պայմանագրութեանց դաշնագիր մը, որով շատ մը արտօնութիւններ և ազատութիւններ կը տրուէին Գաղղիացիներուն Օսմանեան հողի վրայ, և որ ծառայած է իբր հիմն և նախատիպ այն արտօնեալ և ապահարկ կացութեան (Capitulations), զոր Եւրոպացիներ կը վայելեն Օսմանեան կայսրութեան մէջ։ Սարգիս կաթողիկոսի մահն ալ այդ միջոցին պէտք հաստատենք 1536ին, հիմնուելով Դավրիժեցիէն անոր յաջորդին տրուած թուականին (ԴԱՎ. 337), քանի որ ուրիշ աղբիւր չենք գտներ աւելի ճիշդ ժամանակագրութիւն մը կազմելու, և ոչ ալ յատուկ տեղեկութիւն մը մահուան պարագաներուն վրայ։ Ինչպէս կը տեսնուի, այդ միջոցին կաթողիկոսներուն անուններէն զատ բան մը չենք կրնար յառաջ բերել, և իրենց մասին հաւանական ժամանակագրութիւն միայն կրնանք կազմել, ինչ որ ինքն ըստ ինքեան բաւական է աթոռին անկեալ վիճակը ցուցնելու։

**1541**. Պատմական յիշատակներու կարգին կը գոհանանք քաղել քանի մը նոր

**ԲԱՐՈՒՆԱԿ ԱՄԴԵՑԻ**

վկաներու յիշատակութիւնները, որչափ որ կը գտնենք կցկտուր յիշատակարաններու մէջ։ Բարունակ Ամդեցի, սովորաբար Պուտախ կոչուած, արուեստի հօր և քահանայի դուստր մօր զաւակ մը, և Տիարպէքիր բնակող, ախորժ կը զգար Հայոց եկեղեցին յաճախել, և Մկրտիչ աբեղայէ մը և քահանաներէն ընթերցմունքներուն կը տեղեկանար, և աւելի կը հետաքրքրուէր Ցայսմաւուրքի վկայաբանութիւններով, և հաւատք քարոզելու և հաւատոյ համար նահատակուելու եռանդով կը բորբոքէր։ Թուրք և արաբ և պարսիկ լեզուներու հմուտ, այլազգիներու հետ կը տեսակցէր և քրիստոնէութիւնը կը բացատրէր, և իր ձեռքով [illegible] (ՆՈՐ. 362)։ Թէպէտ տունի և խանութի տէր էր Բարունակ, բայց ինքզինքը աւելի քարոզութեանց էր տուած, և երեք տարիէ հետէ այդ կեանքը կը վարէր, երբ ոմանք զինքը նենգութեամբ չէյխի մը մօտ կը տանին և գրոյց կը հանեն թէ տաճկացաւ։ Պուտախի հերքելուն վրայ նախ դատաւորին և յետոյ կուսակալին առջեւ կը հանեն, երեք օր բանտարկութենէ ետքը, կիրակի օր նորէն ատեան կը բերեն, և երկար հարցափորձէ, և հարուածներով և հրով փորձելէ ետքը, վերստին կը բանտարկեն։ Միւս օր կրկին դատաստանով և սպառնալիքներով կը ստիպեն, և անդրդուելի մնալուն վրայ, ոտուըներէն ու ձեռուըներէն ձողի մը կը բեւեռեն, և վիզէն չուան մը կը կախեն, և չորս կողմը փայտ ու խոփ դիզելով, եօթը ժամ չարունակ կ'այրեն, մինչեւ որ մարմինը մոխիր կը դառնայ (ՆՈՐ. 368)։ Պուտախի կամ Բարունակի նահատակութիւնը դրուած է 1524 յունիս 13ին (ՁԱՄ. Գ. 516), որ երկուշաբթի օր մըն է, և կը յարմարի առաջին ատեանին կիրակի օր տեղի ունենալուն (ՆՈՐ. 363)։

**1542**. Լոկ անուններով միայն ծանօթ են ուրիշ քանի մը նահատակներ ալ։ Կա-

**ՈՒՐԻՇ ՎԿԱՆԵՐ**

րապետ Մելիտինեցի, Մալաթիոյ եկեղեցւոյն լուսարարը, հրով նահատակուած է 1524ին, իսկ օրը չէ յիշատակուած (ՁԱՄ. Գ. 516)։ Թորոս Եդեսացի 1528ին (ՁԱՄ. Գ. 516), Հայրապետ Տեւու վանքին աբեղայ 1533ին (ՍԱՄ. 176), Թադէոս Սեբաստացի երէց 1534ին (ՁԱՄ. Գ. 516), և Շանքուռակ գիւղի քահանան ալ 1535ին, որուն անունը չէ յիշուած (ՍԱՄ. 176)։ Ասոնց ամէնուն ալ նահատակութիւնները կրակով կատարուած են։ Քիչ մը աւելի տեղեկութիւններ տրուած են Կոկճայ (ՆՈՐ. 373) կամ Կէօկճան (ՁԱՄ. Գ. 516) կամ Օգջա Սեբաստացիին վրայ (ՍԱՄ. 176)։ Տաճիկ զինուորներ յանկարծակի տունէն հանելով, ատեան կը տանին թէ [illegible] (ՆՈՐ. 373), և խսկոյն ուրացութեան կը հրաւիրեն և տանջանքներու կը ձեռնարկեն։ Ձեռուըներն ու ոտուըները կապելով գետին կը պառկեցնեն, լեզուն կը կտրեն, կը ծեծեն ու կը խոցոտեն, և վերջէն հրապարակ տանելով գլխիվայր ցցահար կը կանգնեցնեն և քարկոծմամբ կը սպաննեն (ՆՈՐ. 375)։ Միայն տարեթիւը յիշուած է 1536ին, և կոչուած է [illegible] և [illegible] (ՍԱՄ. 176), բայց տաղին մէջ միշտ իբր [illegible] և [illegible]

ներկայացած է, (ՆՈՐ· 375) որով ազնուազգի երիտասարդ մը եղած ըլլալը կը ստուգուի։

**ԳԵՐՄԱՆԻԱ ԲՈՂՈՔԱԿԱՆ**

**1543**. Վերեւ անցողակի ակնարկեցինք թէ Լեւոն Ժ Հռոմայ պապը զբաղած էր նորաղանդութեան խնդիրներով (§ 1539), որ ընդարձակ տարածում սկսած էին ունենալ, և իդէպ կը դատենք քանի մը խօսք աւելցնել Բողոքականութեան վրայ, որ եթէ ոչ այն ատեն, վերջին ատեններ Հայերուն մէջ ալ մուտ գործեց։ Յիշած ենք թէ դարուկէս առաջ Եւրոպիոյ մէջ ազատամիտ վարդապետութիւն մը կը քարոզուէր Վիքլէֆի և Հուսի ձեռքով (§ 1431)։ Ըսողներ կան թէ անոնց վարդապետութիւնը իր արմատն ունէր Պաւղիկեանց աղանդին մէջ, որուն հայկական ծագում ալ կը տրուի (§ 671), և որուն հետեւողներ Ասիոյ մէջ ընկճուելէ ետքը Եւրոպա անցան, և ծագում տուին Բուլղարիոյ Բոգոմիլներուն, Լոնգոբարդեան աղանդաւորներուն և Գաղղիոյ Ալբիգեաններուն, որոնց դէմ զինուեցան Դոմինիկեան միաբանութիւնը և Հռոմի հաւատաքննութիւնը (§ 1179)։ Ըստ այսմ վարդապետական խնդիրներ, շարունակեալ գոյութիւն ունեցած էին, երբ յանկարծական ասպարէզ գտան Մարտինոս Լուտերի (Luther) ձեռքով։ Երկու գլխաւոր առիթներ շարժումին պատճառ եղան։ Յուլիոս Բ ռազմագէտ և քաղաքագէտ անձ մը, 1503'ին պապ ընտրուելով ձեռնարկած էր Գաղղիացիները և Գերմանացիները Իտալիայէ հեռացնել, և իր յաջորդը Լեւոն Ժ 1516 դեկտեմբեր 19'ին Գաղղիոյ հետ համաձայնութիւն կնքելով, Բիտուրգիոյ կանոնները ջնջած էր (§ 1432), որով Գերմանիոյ հետ միայն յարաբերութիւններ լարուած կը մնային։ Լեւոն Ժ, որ գեղարուեստից պաշտպան ճանչցուած է, Ս. Պետրոսի Վատիկանեան տաճարին շինութեան միջոցներ հայթայթելու համար, մեղաց և ապաշխարանաց լիակատար ներողութեան փոխանակութեամբ նպաստահաւաք ձեռնարկ մը բացած էր, 1517 սեպտեմբեր 13'ի կոնդակով, անոր շահագործումը Դոմինիկեան կրօնաւորներուն յանձնելով, մինչ անկէ առաջ այդպիսի գործեր Օգոստինեան կրօնաւորներուն իրաւունքն էր եղած։ Մարտինոս Լուտեր, Օգոստինեան միաբանութեան կրօնաւոր քահանայ և Աստուածաբանութեան ուսուցիչ, իր միաբանութեան իրաւունքը պաշտպանելու ձեռնարկեց, և խնդիրը յառաջացնելով, նոյնիսկ դրամով մեղաց ներողութիւն տալու սկզբունքին դէմ ելաւ, և պապական իշխանութեան հիմերը քննութեան ենթարկելով, անոր զեղծումները սկսաւ յանդիմանել։ Լուտերի նախաձեռնութիւնը մեծ ընդունելութիւն և պաշտպանութիւն գտաւ Օգոստինեաններէ և եկեղեցականներէ՝ իբր սեփական խնդիր, և Գերմանացի իշխաններէ և ժողովուրդէ՝ իբր պապերուն հակագերման ուղղութեան ընդդիմութիւն։ Մրցումը հետզհետէ աճեցաւ և տարածուեցաւ, և երբ Լեւոն Ժ 1520 յուլիս 15'ին Լուտերի 41 նախադասութիւնները, և 1521 յունուարին նոյնինքն Լուտերն ալ նզովեց, բողոքականութիւնը հռոմէականութենէ զատուելով ինքնուրոյն կացութեան իրաւունք ստացաւ, և ոչ միայն Գերմանիա, այլ ուրիշ երկիրներ ալ արձագանգ տուաւ։

**ԲՈՂՈՔԱԿԱՆ ԵՐԿԻՐՆԵՐ**

**1544**. Գերմանախօս Հելուետիոյ մէջ գլուխ կանգնեցաւ Ուլրիկոս Զուինկլ (Zwingli), Զիւրիխի (Zurich) աւագերէցը, որ 1522'ին ձայն բարձրացուց դրամի փոխարէն շնորհուած ներողութեանց դէմ, և շուտով իրեն յարեցան Հելուետիոյ ինքնուրոյն գաւառները։ Գաղղիախօս Հելուետիոյ եկեղեցականներէն Յովհաննէս Կալվին (Calvin) բողոքական սկզբունքները ընդգրկեց, զորս առաջին անգամ յայտնեց Փարիզի մէջ 1532'ին, և անկէ Հելուետիա գալով և զանազան քաղաքներ շրջելով իրեն կեդրոնը հաստատեց Ժընէվի (Genève) մէջ 1536'ին, և բողոքականութեան աւելի գիտական և աւելի կարգադրեալ ձեւ տալու արժանիքն ունեցաւ։ Դանիոյ մէջ Յովհաննէս Թաուզըն (Tausen) մեծ յաջողութիւն ունեցաւ, Քրիստիանոս Բ և Գ թագաւորներուն պաշտպանութեամբ, մինչեւ որ 1536'ին ընդհանուր գումարմամբ բողոքականութիւնը ազգային կրօնք հռչակուեցաւ։ Նորվէգիա և Իսլանտա՝ որ Դանիոյ իշխանութեան ներքեւ էին,

և Շուէտիա որ Դանիոյ գերիշխանութիւնը կը ճանչնար, միևնոյն հոսանքին հետևեցան Այսլանտ և Լապոնիա Բէթէրսին (Pe[illegible]) [illegible] քաղաքութեամբ։ Անգլիոյ մէջ Հենրիկոս Ը թագաւոր, 1521'ին Լուտերի դէմ հրատարակութիւն ալ ըրած էր, բայց երբ Կատարինէ Արագոնացիին հետ ամուսնութիւնը լուծելու և Աննա Պոլէյնի (Boleyn) հետ ամուսնանալու խնդիրը ծագեցաւ, և Կղեմէս է պապ՝ 1527'ին նպաստաւոր կարծիք տուած ըլլալով հանդերձ 1529'ին մերժեց, Հենրիկոս՝ Թովմաս Քրոմուէլի (Cromwell) խորհրդով 1531'ին Հռոմէ բաժնուելու որոշումը յայտնեց, և անգլիական եկեղեցւոյ ինքնիշխան տէր հռչակուեցաւ, և 1534'ին կազմակերպութիւնը լրացուց, թէպէտ ոչ բառ առնեայնի Լուտերի ու Կալվինի և Զուինկլի սկզբունքներով, բայց արդեամբ Անգլիան ալ Հռոմէ բաժնուեցաւ, և միայն մասնաւոր բաժիններ մնացին յիշեալ երկիրներու մէջ՝ Հռոմի հետ կապուած։ Մեր նպատակը չէր բողոքականութեան վրայ կատարեալ տեղեկութիւն տալ, անոր համար ոչ անոր վարդապետական սկզբունքները բացատրեցինք, ոչ իրեն մէջ ունեցած խնդիրները պատմեցինք, և ոչ ալ ներքին կազմակերպութեան զանազան կէտերը յառաջ բերինք։ Այլ բաւական սեպեցինք միայն սկզբնաւորութեան պարագաները և քանի մը ժամանակագրական թուականներ յիշել, իբրև նշանաւոր եղելութիւն մը, որուն մասին իւր կարգին պիտի ստիպուինք խօսիլ, Հայոց հետ ալ ունեցած շփումները և ներգործած ազդեցութիւնները պատմածատեններս։

# Տ. ԳՐԻԳՈՐ ԺԱ. ԲԻՒԶԱՆԴԱՑԻ

**ՆԱԽԸՆԹԱՑՆ ԵՒ ԱԹՈՌԱԿԻՑԸ**

**1545**. Դավրիժեցին 1536 թուականին ներքև կը դրէ. կաթողիկոս տէր Գրիգոր (ԴԱՎ. 337), առանց յայտնելու ով և ուստի ըլլալը, և ոչ ալ նախապէս աթոռակից եղած ըլլալը, և մենք ալ անհաւանական չգտեցինք Սարգիս Վրաստանցիին առանց աթոռակցի մնացած ըլլալը (§ 1538)։ Ուր որ որոշ տեղեկութիւններ կը պակսին և մանր ակնարկներէ պատմութեան շարքը կապակցել կը պարտաւորուինք, ներեալ կ'ըլլայ անշուշտ երբեմն միրձեցումներ ընելով [illegible] բացինք։ Այդ համարձակութեամբ դիտած ենք թէ Էջմիածինի մէջ Գրիգոր կաթողիկոս մը կ'երևի, երբ Կոստանդնուպոլսոյ մէջ Գրիգոր պատրիարք մը կը դադարի։ Աւելցնենք որ Գրիգոր պատրիարքը Էջմիածնեցի մըն է, և նոյն իսկ նախկին կաթողիկոսի մը եղբօրորդի (§ 1539), որ կերպով մը խրախոյս կու տայ աղջեւ անցնելու և կաթողիկոսական աթոռին յաջորդութեան ձգտելու, այնպիսի ժամանակ մը որ կանոնական ընտրութիւններ պատահական և անձնական նախաձեռնութիւններով փոխանակուած էին։ Այդ տեսութիւններն են ահա, որ մեզի համարձակութիւն կու տան նոյն ինքն Զաքարիայի եղբօրորդի և Կոստանդնուպոլսոյ պատրիարք Գրիգորը տեսնել՝ Էջմիածինի գահակալ Գրիգորին մէջ, և այս դիտողութեամբ տուած ենք անոր Բիւզանդացի մակդիր անունը։ Ինչպէս ըսինք, վկայեալ պատմութիւն մը չէ մեր տեսութիւնը, բայց պարագաներու մերձեցումամբ քաղուած եզրակացութիւն մըն է, որ իւր ոյժն և արժէքն ունի, ուր ստոյգ տեղեկութիւններ չեն գտնուիր։ Գրիգորի կաթողիկոսութիւնը կը յիշատակուի 1540 թուականին ներքև ալ Մշոյ Ս. Առաքելոց վանքը (ԹՈՐ. Բ. 422) և Ջերմուկ քաղաքը (ԹՈՐ. Բ. 456) գրուած յիշատակարաններուն մէջ։ Աւելի ետքն ալ 1541'ին դարձեալ կը յիշէ զայն Դավրիժեցին, երբ Գրիգորի մօտ աթոռակից մը աւելնալը կը պատմէ (ԴԱՎ. 337), և այս յիշատակութիւնն է անշուշտ, որուն կ'ակնարկէ Ալիշան, որ Գրիգորը Գրիգորիս ալ կը կոչէ (ԱՐՐ. 230), ինչպէս կը կոչէ նաև Զմշկածագի

*մէջ գրուած յիշատակարան մը* (ԹՈՐ. Բ. 364)։ *Սակայն* 1541 *տարին պէտք չէ իբր Գրիգորի կաթողիկոսութեան վերջ համարիլ, ինչպէս ըրած են Զամչեան* (ՉԱՄ. Գ. 517) *և Երևանեցին* (ՋԱՄ. 20), *զի Դավրիժեցին նոյն տարւոյն ներքև տակաւին կենդանի կ'ընդունի Նոյն տէր Գրիգոր կաթողիկոսը, աւելցնելով թէ այլ և եղբօր հոգևորին տէր Ստեփաննոս*(ԴԱՎ. 337), *որով Ստեփանոս լոկ աթոռակից եղած կ'ըլլայ* 1541*'ին և ոչ բուն գահակալ կաթողիկոս։ Այլ թէ երբ վերջացաւ Գրիգորի կաթողիկոսութիւնը ճշդելու փաստեր կը պակսին, և անյարմար չէր ըլլար զայն երկարաձգել մինչև* 1545, *երբ առաջին անգամ յիշատակուած է Գրիգորի յաջորդը Ստեփանոս* (ԴԱՎ. 337)։ *Որչափ ալ Դավրիժեցին կը գրէ թէ իւր դրած թուականները սկզբնաւորութեան տարիներ չեն* (ԴԱՎ. 334), *սակայն քանի ժամանակները իրեն կը մօտենան աւելի ճիշդ տեղեկութիւններ գտած կ'ըլլայ, և մենք իրաւունք կ'ունենանք աւելի կարևորութիւն տալ վերջին թուականներուն։ Մանաւանդ որ քիչ քիչ կը սկսին պատմական յիշատակներ ալ չասնալ, որով հնար կ'ըլլար Դավրիժեցիին ճիշդ թուականներ գտնել։ Աւելի տեղեկութիւն չունինք Գրիգորի նկատմամբ։*

**1546**. *Գրիգորի կաթողիկոսութեան օրով նորոգուեցաւ ծռազատիկի հնացեալ խնդիրը, որ հանդիպած չէր* 1292*'ի վերջին ծռազատիկէն իվեր, այսինքն է, Հռոմկլայի առնուելէն ասդին* (§ 1191)։

**ՆՈՐ ԾՌԱԶԱՏԻԿ**

*Տոմարական հաշիւները այնպէս իմն կը բերեն, որ իւրաքանչիւր հինգհարիւրակին մէջ չորս անգամ միայն ծռազատիկ կը հանդիպի իրարմէ* 95 *տարի տարբերութեամբ, և* 247 *տարիներու միջոց մը առանց ծռազատիկի կ'անցնի և այս հիմամբ դիտեցինք իւր կարգին թէ* 1387 *տարին ծռազատիկ չէ եղած* (§ 1361)։ *Առանց ծռազատիկի միջոցը* 1292*'էն իվեր կը քալէր, և նոր ծռազատիկը կ'իյնար* 1539*'ին, ինչպէս տոմարական հաշիւներ կը ցուցնեն, և ուղիղ չէ Ջերմուկցի Եղիա արեգային զայն* 1540*'ին դնելը* (ԹՈՐ. Բ. 454)։ *Շփոթութիւնը կրնանք մեկնել, բսելով թէ Հայոց* 989 *թուականը կը սկսէր* 1539 *նոյեմբեր* 7*'ին, և եթէ Ջերմուկցին իւր Ցայսմաւուրքը աւարտեց* 1539 *նոյեմբերէ* 1540 *մարտ միջոցին՝ նոր զատիկը չեկած, կրցաւ անցեալ զատիկը միևնոյն* 989 *թուականին վերագրել և այնպէս յիշատակել։ Ինչ ալ ըլլայ շփոթութեան պատճառը, պէտք է պինդ բռնենք տոմարական հաշիւը և* 1539 *ապրիլ* 6*'ին և* 13*'ին դնել յոյն և հայ զատիկները, ինչպէս կը դնէ ժամանակագիր մըն ալ* (ՍԱՄ. 176)։ *Հետաքրքրական պարագաներ կը պատմէ Ջերմուկցին Երուսաղէմի մէջ յուզուած վէճերուն մասին։ Ճշմարիտ զատիկին ժողովրդական փաստը լուսահանութիւնը ըմբռնուած ըլլալով, Հայեր Յոյներէ կը պահանջեն, որ անոնց ճրագալոյցին, այսինքն ապրիլ* 5*'ին, Յոյներուն Փլաբիոս պատրիարքին հետ, Հայ եպիսկոպոսներ ալ մտնեն սուրբ Գերեզմանը որ քննեն լոյսին ճշմարտութիւնը, և մինչև* 500 *և* 1000 *ոսկի գրաւ կը խոստանան։ Սակայն Յոյներ չեն հաւանիր, այլ ղեխման և քէղբէի դահեկան է ղանեն գերեզման կը մտնեն, և իբր թէ լոյսը կը հանեն, սակայն էէնէչարէք և այլազգէք որ է դասն էէն կը վկայեն թէ ինքնին լոյս չելաւ։ Երբոր Հայոց ճրագալոյցը կու գայ, ապրիլ* 12*'ին, հագիւ թէ Հայեր երկու անգամ թափօր կը դառնան Գերեզմանին չուրջը, և ահա լուսն Բասա է կանթեղէն, և տաճիկ պաշտօնեաներ՝ Նղաչէմին, ղարէն և եազէչէն և շատ էէնէչարէք, որ ներկայ եղեր են դուրսէն, վկայեր են լոյսին ճշմարտութեան* (ԹՈՐ. Բ. 455)։ *Այս պարագաները պատմելով, բնաւ դիտում չունինք լոյսի խնդիրը բացատրել, այլ միայն ժամանակին տիրող զգացումներն ու հաւատքը ծանօթացնել։ Ուրախ պիտի ըլլայինք տեսնելով որ գոնէ կախեններու յիշատակութիւն չընէր Ջերմուկցին, սակայն ուրիշ տեղէ կը վկայուի թէ Յոյներ յորոցէն առման ԴՃ, և տային եղէն հանդիպելոյ Հայոց ՃԺ.ՃԺ ծնոյ և Ներսէսեանց* (ԱՍՏ. Ա. 254)։

**1547**. *Ծռազատիկին տարին Հայոց պատրիարք եղած կ'ըլլայ Աստուածատուր Մերտինցին, որ ըստ ոմանց* 1523*'ին ընտրըուելով* 19 *տարի պաշտօնավարելէ ետքը* 1542*'ին տեղի կու տայ Փիլիպպոսի, և անոր*

*մահուանէն ետքը 1562'ին նորէն աթոռ կը բարձրանայ իւր հօրեղբօրորդւոյն Անդրէասի աթոռակցութեամբ և երկու տարիէն կը վախճանի 1564'ին* (ԲԱՌ. 61)*։ Իսկ ըստ այլոց Աստուածատուր 1532'ին կը յաջորդէ Յովհաննէս Ղուկասեանի, որ էր* [illegible]*, զոր մինչև իսկ Թլկուրանցիին հետ նոյնացնողներ կան* (ԱԱՏ. Ա. 251)*։ Սակայն ուրիշ տեղէ այսպիսի յիշատակ չկայ, և առ առաւելն Կիլիկիայէ եկող Յովհաննէս եպիսկոպոսի մը կրնանք պատշաճեցնել այդ ակնարկը։ Սոյն երկրորդ աղբիւրը Փիլիպպոս պատրիարքը չճանչնար, և 1542'ին Աստուածատուրին յաջորդ կը դնէ Անդրէաս Պարոնտէրը՝ Աստուածատուրի հօրեղբօրորդին, մինչ առաջին աղբիւրը 1462'ին կը յետաձգէր, և միանգամայն չյիշեր Յովհաննէսը, որ երկրորդ գրութեան մէջ մեծ դեր ունի ազգային սեփականութեանց պաշտպանութեան համար։ Քանի որ երկու գրողներն ալ Երուսաղէմի միաբաններ են, որ պէտք է ձեռուընին ունենային վաւերական գրութիւնները, մեզի անմեկնելի կը մնան իրենց տարբեր կարծիքները, և անհամաձայնութիւնները լուծելը իրենց կը թողունք, վասնզի այլուր Աստուածատուր կենդանի և գործակից կը յիշուի Անդրէասի հետ մինչև 1554* (ԱԱՏ, Ա. 263)*։ Անդրէասի տրուած Պարոնտէր անունը, այդ մակդիրին առաջին յիշատակներէն մէկն է, բայց առաջիկային ուրիշներու ալ տրուած պիտի տեսնենք։ Զանազան բացատրութիւններ մատուցուած են այդ մականունին, իսկ մեր կարծիքն է երկու պատուաւոր կոչումներու միացումը տեսնել այդ բառին մէջ։ Պարոն կոչումը սովորն է* [illegible] (Patron) *եւրոպական բառին* (ՃԱԿ. 62, 64)*, և կը պատասխանէ հայերէն* [illegible] *կոչման, և այսպէս կը կոչուէին միջին դարերու նշանաւոր և իշխանաւոր անձեր, իսկ Տէր կոչումը իրրև պատուանուն սեփականուած էր եկեղեցականներուն։ Այս տեսութեամբ* [illegible]*, այսինքն* [illegible] *և* [illegible] *կը կոչուէին այն եկեղեցականները, որոնք կանուխէն աշխարհիկ վիճակի մէջ իշխանաւորի դիրք վայելած էին։ Անդրէաս պարոնտէրին գառնալով, սաղիմական յիշատակներ կը պատմեն անոր շատ վէճերը և շատ յաջողութիւնները ազգային սեփականութեանց պաշտպանութեան համար։ Նա ինքն 1555'ին Կոստանդնուպոլիս ալ գացած է, իրեն փոխանորդ թողլով Խաչատուր եպիսկոպոսը* (ԱԱՏ. Ա. 270)*, և այն տեղ չորս տարի մնալով Յոյներու Գերմանոս պատրիարքին հետ դատ վարած է կայսերական ատեանին առջև՝ ազգային իրաւունքներու և ստացութիւններու համար, և յաջողութեամբ Երուսաղէմ դարձած, և 1560'ին նորոգած է Համբարձման եկեղեցին* (ԱԱՏ. Ա. 272)*։ Լատիններուն ալ պաշտպանութիւն և հիւրընկալութիւն ըրած է, երբոր անոնք հեռացած էին Սիոնի վանքէն, և անոնց առժամեայ բնակութիւն տուած է ի* [illegible] *Հրեշտակապետաց վանքն էր, մինչև այժմ* [illegible] (ՀՆՆ. 278)*։*

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ

**1548**. *Սուլտան Սիւլէյման երբոր Պարսից արշաւանքէն դարձաւ 1535'ին* (§ 1540)*, և պէտք տեսաւ իւր բանակը նոր տարրներով կազմակերպել, հրաման ըրաւ պզտիկ տղաքներ հաւաքել ամէն կողմէն և զանոնք զինուորական կեանքին մարզել։ Այդ առթիւ քրիստոնեայ տղաքներն ալ կը հաւաքուէին անխտիր, և իսլամական կրօնքով կը կրթուէին։ Իսկ տղաք բռնի կ'առնուէին ուր որ կը գտնուէին, տուներ ալ կոխելով դուրս կը հանուէին, և ուր ընդդիմութիւն տեղի ունենար, զինու զօրութեամբ, կոտորածով և աւերածով կ'ընկճուէին։ Մանկաժողովը աւելի Ասիական գաւառներու մէջ կը կատարուէր, և քրիստոնեայ տարրերուն մէջ աւելի հարստահարուողը Հայը կ'ըլլար։ Կը յիշուի թէ սուլտան Սէլիմ առաջին անգամ մտածած էր այդ ձևը, սակայն խափանուած էր, և Սիւլէյման զայն հրամայեց աւելի կազմակերպեալ և աւելի բուռն կերպով։ Մանկաժողովը տարուէ տարի կը կատարուէր, և ողբեր ու կոծեր, բռնութիւններ և խռովութիւններ անդադար էին, մինչև իսկ այդ պատճառով Եւդոկիոյ մէջ ութը եկեղեցիներ միևնոյն 1543 ապրիլ 9 օրը այրուած ըլլալը կը յիշ-*

ՄԱՆԿԱԺՈՂՈՎԻ ԴԱԴԱՐՈՒՄԸ

ուի տարեգրութեանց մէջ (ՁԱՄ. Գ. 513)։ Բարձր Հայոց հայաչատ գաւառին կրած տառապանքը անտանելի երեւեցաւ Մաղաքիա Դերջանցի վարդապետին, որ այն ատեն ազդեցիկ դիրք ունէր այն կողմերը, ոչ միայն իւր բանիբուն հմտութեամբ, այլեւ աշխարհաշէն ձեռնարկներով, և որուն անունը մենք ալ անձամբ կարդացած ենք Կոթերի եկեղեցւոյն մէջ թէ Նորոգեցաւ 974=1525'ին ձեռամբ Մաղաքիա վարդապետի, և մեծ կամուրջին վրայ ալ՝ թէ 989=1540'ին կանգնեցաւ ձեռամբ Մաղաքիա վարդապետին։ Մաղաքիա արդէն ծերացեալ, բայց սրտով առոյգ, անձամբ եկաւ Կոստանդնուպոլիս, ուր պատրիարք էր իւր մէկ նախկին աշակերտը, Աստուածատուր Եղուպեան եպիսկոպոս (09 ԱՄՍ. 232), Գրիգոր Բիւզանդացի պատրիարքին յաջորդը, և ամէն ջանք ու միջնորդութիւն գործածեց, մինչեւ որ յաջողեցաւ կայսերական արտօնութիւն ստանալ Դերջանի ու Բաբերդի ու շրջակայից մէջ Հայերուն մանկաժողովը դադրեցնելու։ Մերձաւոր հաշուով հնար է 1545'ին դնել Դերջանցիին յաջողութիւնը։ Օրինակը քաջալերիչ եղաւ ուրիշ գաւառներու ալ, որ յատուկ դիմումներով և յարմար միջոցներով ուրիշ մասնաւոր արտօնութիւններ ձեռք ձգեցին, և այսպէս հետզհետէ նուազեցաւ մանկաժողովի դրութիւնը, մինչեւ որ ատեն անցնելով իսպառ խափանուեցաւ (ՁԱՄ. Գ. 513)։

# Տ. ՍՏԵՓԱՆՈՍ Ե. ՍԱԼՄԱՍՏԵՑԻ

(Սիոն 1931 էջ 305)

**1549.** Վերջին ծռապատիկը 1293'ին Ստեփանոս Դ Կաթողիկոսի օրով տեղի ունեցած էր (§ 1191), և 1539'ի նոր ծռապատիկին յաջորդեց Ստեփանոս Ե'ի աթոռակից կաթողիկոսութեան բարձրանալը, որ Սալմաստեցի կոչուած է ծննդավայրէն առնելով, թէպէտ Կոստանդնուպոլսեցի ըսողներ ալ կան։

**ՅԱՋՈՐԴԵԼՆ ՈՒ ԱԹՈՌԱԿԻՑԸ**

Իբր զի նա Պարսկաստանի Հայ գաղութին հետ մայրաքաղաք փոխադրուած էր տղայութեան ատեն (§ 1539), և հոն մեծցած ու կրթուած, բաւական հմտութիւն ստացած, և Լեհական Հայ գաղթականութեանց մէջ պտտած էր, և նոյն իսկ լատին լեզու ուսած կ'ըսուի (ՁԱՄ. Գ. 517)։ Ստեփանոս Կոստանդնուպոլսէ Էջմիածին երթալով, Գրիգորէ աթոռակից ընտրուեցաւ 1541'ին (ԴԱՎ. 337), թերեւս այս թուականէն քիչ ալ առաջ։ Էջմիածինի շրջանակէն դուրս, Կոստանդնուպոլսէ եկողի մը աթոռակցութեան կոչուիլը, մեր տեսութեամբ կրնայ իբր փաստ ծառայել այն կարծիքին զոր յայտնեցինք, թէ ինքն Գրիգոր ալ Կոստանդնուպոլսէ Էջմիածին գալով հայրապետութեան բարձրացած էր (§ 1545), և իրեն յաջորդած էր Ստեփանոս 1545'ին, Դավրիժեցիին ժամանակագրութեան համեմատ (ԴԱՎ.117), որ ըստ այսմ չորս տարի աթոռակցութիւն վարած կ'ըլլայ։ Ստեփանոս կաթողիկոսութեան սկիզբը փութաց իրեն աթոռակից մը առնել, և նորէն Էջմիածինի շրջանակէն դուրս մէկ մըն էր, որ այդ աստիճանին կոչուեցաւ, և է Միքայէլ Սեբաստացին։ Այս կերպով պահ մը նոր տարր կը սկսի Էջմիածինի մէջ գործել, և Էջմիածինի վրայ ներգործել, և նոր շարժում և օգտակար գործունէութիւն մը կը սկսի այնտեղ, թէպէտ շուտով դադարելու սահմանուած, Վաղարշապատցիներու նորէն կացութեան տիրանալուն հետեւանքով։ Սալմաստեցիին շուտով աթոռակից մը ընտրելը, չենք կրնար անոր տարիքին և տկարութեան վերագրել, զի 1514'ի գաղութին (§ 1539), տակաւին դեռահաս եղողը 1545'ին մեծ տարիք չէր կրնար ունենալ, այլ այդ որոշման մէջ կը նկատենք այն հեռաւոր զիտումը զոր ունէր, Հայ գաղթականութեանց և օտար երկիրներու մէջ պտոյտի ելլալու. ուստի պէտք էր որ յարմար տեղակալ մը թողուր Մայրաթոռին մէջ։ Իսկ այդ հեռաւոր նպատակին մէջ կը

տեսնենք ոչ միայն հայրապետական աթոռին նպաստներ ճարելու դիտումը, այլեւ անոր դիրքը բարձրացնելու և զարգացման սկզբնաւորութիւններ ընելու կամքը, ինչ որ արդիւնք էր իր կանուխէն ստացած ուսումնական տասելութեանց։ Նպատակին գործադրութիւնը եթէ անմիջական չեղաւ, չատ ալ չուշացաւ, որովհետեւ Ստեփաննոսի ուղեւորութիւնը, սովորաբար կը դրուի չուրջ 1548 թուականին։

**1550.** Ստեփաննոսի նպատակը փութացնելու պատճառ տուին ընծայեցին քաղաքական պատահարներն ալ։ Շահ Թահմազի եղբայրը Ալխազ իշխան, եղբօրը հետ գժտելով,

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏԱՀԱՐՆԵՐ**

անոր դէմ գրգռած էր Օսմանեանց սուլտան Սիւլէյմանը, և սա անոր վստահելով արշաւանք մը կազմեց Պարսից դէմ, բայց Թահմազ խուսափեց մեծ պատերազմի բռնուելէ, և Սիւլէյման համարձակ արշաւեց Արարատի և Վասպուրականի կողմերը աւերելով և գերելով զբազում մարդիկ (ՁԱՔ. Ա. 11), և 20 ամուր քաղաքներ գրաւելէ ետքը, 1549 դեկտեմբեր 21'ին Կոստանդնուպոլիս դարձաւ (ԺՈԻ. 147)։ Ճիշդ այդ միջոցին է Ստեփաննոսի էջմիածինէ հեռանալը, և համընթաց կը հանդիպի Սիւլէյմանի արշաւանքներուն։ Ստեփաննոսի անծանօթ չէին Օսմանեանց մեծութիւնն ու զօրութիւնը, և իրաւամբ կրնար վստահիլ անոնց վերջնական յաջողութեանը, և այս տեսակէտով Կոստանդնուպոլիս կը դիմէր այնտեղ կարգադրելու համար Մայրաթոռին ապագայ կացութիւնը։ Բայց հազիւ թէ Սիւլէյման հեռացած էր Պարսից սահմաններէն, որ Թահմազ տոիթէն օգտուեցաւ Օսմանեանց սահմանները յարձակելու, և բուռն բուն նշանակութեամբ աւերեաց, քանդեց ու կողոպտեց, Խնուս, Բասէն, Կարին, Դերջան, Կեղի, Բաբերդ, Երզնկա և Սպեր գաւառները (ՁԱՔ. Ա. 11)։ Այդ միջոցին Ստեփաննոս արդէն Կոստանդնուպոլիս կը գտնուէր, և աջակցութեամբ Աստուածատուր պատրիարքի, որուն ապսեցին դիրք մը ձեռք ձգած ըլլալը Մաղաքիա Դերջանցիի ընծայած ձեռնտուութեան մէջ տեսանք (§ 1548), ձեռնարկեց Մայրաթոռի պաշտպանութեան պայմանները հոգալ, սակայն աւելի առջեւ չկրցաւ երթալ, որովհետեւ չուտով հասաւ Պարսից արշաւանքին գործը, և Արեւելքին նորէն Պարսիկներու ազդեցութեան ներքեւ մնալը։ Պարսից յարձակումը 1549'ի վերջերէն սկսելով շարունակեց մինչեւ 1552, անոր համար Թադէոս Սեբաստացի վարդապետ զայն կը զուգակցէ այն տարւոյն, յորում հազար ամ լցաւ թուական Հայոց տոմարին (ՁԱՄ. Գ. 514), ակնարկելով Յայտնութեան պատգամին, թէ յետ հազար ամին լուծցի սատանայ (ՅՑՑ. Ի. 7), զի այստեղ ալ ուղէ մի Ղզլպաշ ազին՝ շարժեցաւ նման վիշապին (ՀԱՑ. 593)։ Կսկծագին են Սեբաստացիին խօսքերը. Ու գեղ ու քաղաք թողուցին, կ'ըսէ, զամենայն հրով այրեցին, զայգիսն ամէն կտրեցին, զարտօրայսն ամէն այրեցին, զամենայն սրով մաշեցին (ՀԱՑ. 594), վանք և եկեղեցիք ի հիմանց խախտեալ քակեցին, բազում գերիս ու աւարամածութիւնս՝ զայն ամէնն առեալ բերեցին (ՀԱՑ. 595)։ Բնական էր որ այդ պատահարներ վերիվայր ընէին Սալմաստեցիին նպատակը, և զայն կասեցնէին Օսմանեան կայսրութեան մօտ դիմումները շարունակելէ։

**1551.** Կոստանդնուպոլսոյ մէջ օգտակար ձեռնարկ մը ընելէ յուսաբեկ՝ Ստեփաննոս մտածեց Եւրոպա անցնիլ, և Եւրոպական քրիստոնեայ տէրութեանց հետ

**ՍԱԼՄԱՍՏԵՑԻՆ Ի ՀՌՈՄ**

բանակցելով օգնութեան և նպաստի արդիւնքներ ձեռք բերել, և զարգացման միջոցներ ճարելով իր աթոռը բարձրացնել։ Լատին եկեղեցին 1300'էն սկսած էր յոբելեան տարւոյ տօնախմբութիւնը մեծահանդէս կատարել՝ որ թողութ թողի ալ կը կոչուի։ Առջի ատեններ հարիւրամեակի լրման պիտի կատարուէր, բայց չուտով յիսնամեակի փոխուեցաւ, և 1475'ին քսանեւհինգամեակի վերածուեցաւ։ Վատիկանեան տաճարին մեծ դռներէն մէկը հիւսուած կը մնար, և յոբելեան տարին հանդիսապէս կը բացուէր, և տարւոյն վերջը նորէն կը հիւսուէր։ Ստեփաննոսի Կոստանդնուպոլիս գալուն յաջորդ տարին, 1550 թուականը յոբելեան տարի էր Հռոմի մէջ, և Պօղոս Գ պապ արտակարգ չքեղութիւն տալ որոշած էր, մեծ հանդէսներով և առատ ներողութեանց շնորհներով։

նպատակն էր որ շատ բազմութիւն համբ Հռոմ և Վատիկանեան նորաշէն տաճարին լրանալուն և զարդարուելուն մեծագանձ նուէրներ հաւաքուին։ Այդ համաշխարհային համախմբութիւնը շատ յարմար էր Ստեփանոսի նպատակին, և որուշեց Հռոմէ սկսիլ իւր Եւրոպական շրջագայութիւնը։ Հռոմէագաւանութեան պաշտպաններ, հազիւ թէ Հռոմի անունը կը յիշուի, պապին նպատակութենէ զատ բան չեն տեսներ այդ շարժումին մէջ, բայց տարբեր և ընդարձակագոյն էր Ստեփանոսի նպատակը։ Նա մտադիր էր Եւրոպայի զանազան կողմերը շրջագայիլ և գլխաւոր պետութիւններուն հետ յարաբերութիւն հաստատել։ Այդ մասին շատ նշանակալից է Պարսից նպատակ Հայոց կողմէ Վենետիկի հանրապետութեան ուղղուած գրութիւնը, 1547 թուականով (ՎԵՆ. 326), ուր իբր իրենց ներկայացուցիչ կը նշանակեն Ստեփանոս պատրիարքը, և կը յայտարարեն թէ նը սպանեմ յեր տղան, համոզուած ըլլալով, որ ի գծոնոաբենէ տերանց Վենետոց պէտք ունի մեր փրկութեանն և ազատութեանն (ՎԵՆ. 329)։ Որոշած են որ պապին ալ դիմում ըլլայ, վասնզի այն ատեն Հռոմ, ոչ միայն Եւրոպիոյ գլխաւոր արքունիքներէն մին էր, այլև իր կրօնական կերպարանով գերագոյն դիրք մը ստացած էր։ Միւս արքունիքներն ալ կրօնամոլ ձգտումներ ունէին, և իրենց դաւանութենէ դուրս եղողներուն համար, թէ ոչ հակառակ, գոնէ անտարբեր էին, և Հռոմի պապէն յանձնարարութիւն մը մեծ նշանակութիւն ունէր անոնց հաճելի ըլլալու։ Ստեփանոսի համար անհրաժեշտ պայման էր Հռոմէ երթալ, և յոբելեան տարւոյ պարագան աւելի ևս կը դիւրացնէր իւր նպատակը, վասնզի կրնար Հռոմի մէջ ամէն կողմէ եկողներու հետ ծանօթութիւններ հաստատել,

**1552.** Ստեփանոսի Հռոմ երթալուն մասին ազգային յիշատակարաններ և ժամանակագիրներ բնաւ ակնարկ մը չունին, նոյնիսկ Հռոմի դիւաններէն ալ ոչ մի պաշտօնական գրութիւն յառաջ բերուած է, և կաթողիկոսի մը անձամբ Հռոմ գալուն ամենանշանաւոր պատահարին պարագաները պատմող կամ

**ԵՐԹԱԼՈՒՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ**

եղելութիւնը յիշատակող մը չկայ։ Մեր տեսութեամբ անհնար էր որ Հռոմի դիւաններ լուռ մնացած ըլլային այդպիսի կարեւոր պատահարի մը վրայ, ուստի կրնայինք այդ կրկին կէտերու, այսինքն ազգային յիշատակներուն և Հռոմի դիւաններուն լռութեանցը վրայ հիմնուելով, իբրև ճշմարտուած եղելութիւն չընդունիլ Սալմաստեցիին Հռոմ երթալը, ինչպէս Պալճեան ինքն ալ լռութեամբ կ՚անցնի, և Սալմաստեցիին ուղեւորութիւնն իսկ չյիշեր (ԿԱԹ. 151), և Փափազեան ալ զանց կ՚ընէ յիշել միաբանական և համակերպական պայմանները (ՓԱՓ. 775), Ալիշան ալ զանց կ՚ընէ այս տեսակէտը (ՎԵՆ.330), զոր կը պանծացնէ Զամչեան, թէպէտ այն չպարունակուիր Գուլատերիոս Արևտացիէ իւր իսկ յառաջ բերած հատուածին մէջ, մանաւանդ թէ հակառակը կը քաղուի Գուլատերիոսի խօսքերէն, որ գրեր է թէ Ստեփանոս յուղ ինչ նորեւոր խորհեր ի մտի, այլ առաջիկայ ժամանակ խափան լինէր ըանէյ նորա (ՋԱՄ.Գ.518)։ Մենք չենք ուզեր մեր քննադատութիւնը յառաջ մղել ուղեւորութիւնը ուրանալու չափ, և ըսել թէ Գուլատերիոս կամ եղջերուաքաղ մը պատմած է, և կամ խաբեբայի մը հանդիպած է, զի Ստեփանոսի Հռոմ երթալը կը հաստատուի, թէ վերոյիշեալ թուղթով, և թէ Եթովպացի Պետրոս արքեպիսկոպոսին ձեռնադրութեան վկայագրով, որ գրուած է 1549 սեպտեմբեր 6՚ին ի կայսերանիստ և ի մայրաքաղաքն մեծն Հռոմ (ՀԱՑ. 593), ուր պապին նկատմամբ զփոխն տեղոյն ակնարկէն աւելի խօսք ալ չկայ (ՀԱՑ.592)։ Բայց այս տեսակցութիւնն ալ ընդունելով, ուրիշ բան չենք տեսներ Սալմաստեցիին ընթացքին մէջ, բայց եթէ Եւրոպական օգնութեանց հետապնդութիւն մը, և Եւրոպական զարգացման միջոցներուն հմտանալու փափաք մը։ Ասոնց մէջ պէտք է առաջին կարգին դասել նորահնար տպագրական արուեստը, որով արդէն Հայ գիրքեր ալ երեւցած էին հրապարակի վրայ (§ 1527), բայց չարունակութիւնը ընդհատուած կը մնար (ԼԷՕ. 76)։ Սալմաստեցիին ուղղութեան հակառակ չէր՝ մտերմական և համակրական յարաբերութիւններ ալ հաստատել Պօղոս Գ՚ի հետ, ինչպէս կը յիշէ

*Զամչեան* (ՉԱՄ․ Գ․ 58), *բայց աւելի անոր յաջորդին Յուլիոս Գ'ի հետ, վասնզի Պօղոս չհասաւ յոբելեան տարւոյ հանդիսաւորութիւնները կատարել։ Հայոց կաթողիկոսը կրնար բերանացի և վարկապարագի յուսադրութիւններ ալ խոստանալ պապին, պարզապէս իւր ակնկալած օժանդակութիւնը ձեռք ձգելու համար, և միանգամայն համարձակօրէն հոգեւոր հաղորդակցութիւն ալ ընել անոր հետ, վասնզի Հայ եկեղեցւոյ ներողամիտ հոգին իրեն չէր արգելեր այդպէս վարուիլ ամէն անոնց հետ, որ իրեն համամիտ են երեք նախնական սուրբ ժողովներու հիման վրայ։ Բայց այսչափը չհաստատեր բնաւ թէ Սալմաստեցին Հռոմ գացած ըլլայ պապական իշխանութեան հպատակելու և Հռոմէական եկեղեցւոյ համակերպելու, և հայադաւան եկեղեցին հռոմէադաւանի փոխարկելու համար։*

**ԷՋՄԻԱԾԻՆ ԴԱՌՆԱԼԸ**

**1553**․ *Ստեփանոս նոյնիսկ* 1550 *յոբելեան տարին չելած Հռոմէ մեկնած կ'ըսուի, ուր անշուշտ հետաքրքրութիւնը և բարեպաշտութիւնը յագեցնելու շրջագայութիւնները և այցելութիւնները լրացուց, և շիտակ անցաւ Գերմանիա, Կարոլոս Ե կայսեր տեսակցութեան, որ այդ միջոցին սաստիկ զբաղուած էր Լուտերի վարդապետութեանց երեւէն՝ Գերմանիոյ մէջ տիրող ներքին խռովութիւններով* (§ 1543)։ *Այստեղ ալ մանրամասն տեղեկութիւններ կը պակսին կաթողիկոսին և կայսեր միջեւ տեղի ունեցած յարաբերութեանց և յառաջ եկած արդիւնաւորութեանց մասին, և հաւանական եզրակացութիւնն է թէ կարեւոր արդիւնք մը ձեռք ձգուած չէ։ Գերմանիայէ կ'անցնի Լեհաստան բազմաթիւ Հայ գաղթականութեանց այցելելու, երբ կը թագաւորէր Զիկմունդ կամ Սիգիսմոնդոս Բ Օգոստոս, նշանաւոր իւր աշխարհակալութիւններով և Հռոմի պապութեան դէմ ընդդիմութիւններով, և Գերմանական նորաղանդութեան և Սոկինեանց աղանդին ցուցած պաշտպանութիւններով։ Այդ վերջին պարագան մանաւանդ նպաստաւոր էր Հայոց, որք Լեհաստանի մէջ տիրապետող հռոմէադաւան եկեղեցիէ անջատ դաւանութիւն ունէին։ Լեհաստանի յիշատակներ ալ մեզի յատուկ մանրամասնութիւններ չեն տար Ստեփանոսի գործունէութենէն, որ կարծես թէ անցած տեղերուն մէջ բնաւ հետք չէ թողուցած, անցած ըլլալուն վրայ կասկած յարուցանելու չափ։ Սոյն այս* 1551 *տարին էր, որ Մոլտաւիոյ մէջ, որ է Պուղտան երկիրը, Հայերու դէմ կրօնական հալածանք հռչակեց Ստեֆան իշխանը, յունական որթոդոքսութեան կամ քաղկեդոնիկ դրութեան ուղղութեամբ։ Մոլտաւիա Սալմաստեցիի ուղեգիծին վրայ կը գտնուէր, բայց չենք ստոյգ թէ մասնակցութիւն ուզեց ունենալ, կամ ազդեցութիւն կրցաւ ընել իշխանին վրայ, թէպէտեւ հալածանքը ոչ երկար տեւեց և ոչ ալ արդիւնք մը ունեցաւ* (ՉԱՄ․ Գ․ 519)։ *Սալմաստեցին իւր ուղեւորութիւնը շարունակեց ցամաքի ճամբով, և Կաֆա և ուրիշ հայաբնակ քաղաքներ հանդիպելով Էջմիածին դարձաւ* 1551 *տարւոյ մէջ։ Մայրաթոռոյ դիւաններն ալ մեզի տեղեկութիւն չեն հայթայթեր թէ ինչ նիւթական կամ բարոյական արդիւնքներ կրցաւ քաղել Ստեփանոս իւր Եւրոպական շրջագայութենէն, և ինչով կրցաւ օգտուիլ Էջմիածինը։ Երեւանեցին ալ ոչ մի յիշատակ չէ գտած այս մասին, և Սալմաստեցիին ուղեւորութեան խօսքն ալ չըներ* (ՋԱՄ․ 20)։ *Պարագաները մօտեցնելով կրնանք հետեւցնել, թէ տպագրական արուեստին քաջալերութեան համար Ստեփանոսի աթոռակից Միքայէլի ձեռնարկը՝ իւր առաջին շարժումը առած է Ստեփանոսի բերած տեղեկութիւններով, զի թէ Արեւելքէ Հռոմ և թէ Իտալիայէ Գերմանիա անցած ատեն Վենետիկ հանդիպած է, որ այն ատեն Եւրոպական լուսաւորութեան կեդրոնն էր, և ուր* 150 *տպարաններ կը գործէին* (ԼԷՕ․ 16), *և ուսկից ելած էին առաջին Հայ տպագրութիւնները* (§ 1527)։ *Ստեփանոսէ կը սկսի Էջմիածինի և Հռոմի մէջ յարաբերութեանց նոր շարք մը, որուն հռոմէական մերձեցուցման գոյն կ'ուզեն տալ ոմանք, և զայն իբր նպատակ կը կարծեցնեն, մինչ լոկ միջոց մըն էր այն՝ Եւրոպական զարգացման մերձենալու եռանդէն յառաջ եկած, ինչպէս յստակօրէն կը քաղուի վերեւ յիշուած ազգային գրութենէն* (§ 1551)։

**ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՏԱՀԱՐՆԵՐ**

**1554**. *Ստեփանոս կաթողիկոսի իբր եռամեայ բացակայութեան միջոցին, Մայր աթոռոյ գործերը վարողն էր Միքայէլ Ա. Սեբաստացի, աթոռակից կաթողիկոսը* (§ 1549)*։ Սակայն պէտք չէ բնաւ այնպէս ենթադրել թէ Ստեփանոս իբր հրաժարեալ հեռացած ըլլայ, և եկած առեն Միքայէլ առաջին պատիւ նորէն և ընդհանրութեան անոր դարձուցած ըլլայ* (ՁԱՄ. Գ. 518)*։ Ստեփանոս մեկնեցաւ գահակալի դիրքը վրան պահելով, և Միքայէլ իբր տեղակալ գործեց, արդէն ալ աթոռակիցի դիրքը կը բաւէր որ կարենար կաթողիկոսական գործերը լիապէս լրացնել։ Անծանօթ կը մնայ եւս մեզի թէ ինչ գործունէութիւն ունեցաւ Միքայէլ իբր տեղակալ մնացած տարիները, թէպէտեւ չատ բան սպասելու ալ չեն քաջալերեր ժամանակին արկածալից պատահարները՝ պարսկական արշաւանքին պատճառով, որոնք թէպէտ ուղղակի Օսմանեան և ոչ Պարսկական գաւառներու վրայ կը ծանրանային* (§ 1550)*, սակայն անհնար էր որ էջմիածին ալ փորձանքներուն ազդեցութիւնը չկրէր։ Մանաւանդ որ Շահ Թահմազի Օսմանեան գաւառներուն պատճառած աղէտները, անշուշտ իրենց փոխադարձը պիտի ունենային սուլտան Սիւլէյմանի կողմէ, որ չէր ներեր երբեք Պարսիկներուն՝ անոնց գործած աւերածը։ Հազիւ թէ Սիւլէյման պահ մը դադար գտաւ Հունգարացւոց և Աւստրիացւոց դէմ վարած պատերազմներէն, նորէն Ասիակողմ դարձուց իր զէնքը, և 1554 ապրիլին խաղացոյց իր բանակը, և աւերեց աւարեց, ու գերեց գերփեց Նախիջեւան, Երեւան և Արցախ գաւառները* (ԺՈՒ. 147)*։ էջմիածին այս շրջանակին մէջն էր, և Ստեփանոս ու Միքայէլ ծանրապէս զգացին արշաւանքին հետեւանքները։ Բարեբախտաբար Թահմազ չուտով տեղի տուաւ, և պատուադիր կերպով հաշտութիւն խնդրեց, սեպտեմբեր 26'ին զինադադար եղաւ, և 1555 մայիս 29'ին հաշտութիւն կնքուեցաւ* (ԺՈՒ. 147)*, և բարեկամութիւնը տեւական ձեւ առաւ, և յայտ մտերմական գրութիւններ փոխանակուեցան 1556'ին Սիւլէյմանէն մեծ մզկիթին նաւակատեաց առթիւ, որ կատարուեցաւ օգոստոս 26'ին* (ԺՈՒ. 148)*։ Հարկաւ վերջին արշաւանքէն կրած վնասները դարմանելու հարկն էր, որ Ստեփանոսն ու Միքայէլը ստիպեց, երկու եւս աթոռակիցներ աւելցնել 1557'ին, որոնք եղան տէր Բարսեղ և տէր Գրիգոր, և չորսին ալ անունը միանգամայն կու տայ Դաւրիժեցին* (ԴԱՎ. 338)*։ Վերջին երկուքը Վաղարշապատեցի տեղական ոյժեր կ'երեւան, և այդ մակդիրով կը կոչենք երկուքն ալ։ Բարսեղը համանուններուն մէջ Գ կը հաշուենք, զի Բարսեղ Բ Անեցին, Ապիրատի դէմ Արեւելեայց ընտրած կաթողիկոսը, որոշակի մերժուած չլինելով և առողջ սկզբունքին պաշտպան կանգնած ըլլալով, աւելի քան հակաթոռ, իբր աթոռակից նկատեցինք* (§ 1049)*։ Իսկ Գրիգորը՝ ԺԲ կ'ըլլայ համանուններու մէջ։ Չորս կաթողիկոսներ միանգամայն ունենալու որոշումը, զոր վնասներու պահանջած դարմանին վերագրեցինք, հնար է ներքին խլրտումներ լռեցնելու ալ միջոց նկատել, զի ժամանակ մըն էր որ Վաղարշապատեցի խմբակը զինքն գործերէ հեռու կը գտնէր, և ժամանակին չփոթութիւններէն կրնար օգտուիլ Սալմաստեցիին և Սեբաստացիին դէմ կռուելու։ Ալիշան այդ երկուքէն առաջ Առիստակէս Դ մը կը յիշէ 1555'է մինչեւ 1564 տարիներու համար* (ԱՐՐ. 231)*, սակայն որոշ աղբիւր մը չունի, զի սկսեալ է հայրապետութեան Աթոռակցէն յիշատակութիւնը* (ԱՐՐ. 230)*, ինչպէս է իմանալ Առիստակէս Գ'ի վրայ* (§ 1518)*, քանի որ ուրիշ ոչ մի տեղ նոր Առիստակէսի մը յիշուելուն հանդիպած չենք, և այս պատճառով բոլորովին զանց կ'ընենք այդ անունը։ Դաւրիժեցին ալ կ'անգիտանայ անոր գոյութիւնը, ապա թէ ոչ հինգ կաթողիկոսներ միանգամայն յիշած կ'ըլլար, ուր չորս միայն կը յիշատակէ* (ԴԱՎ. 338)*։*

**ՍՏԵՓԱՆՈՍԻ ՏԵՒՈՂՈՒԹԻՒՆԸ**

**1555**. *Որոշակի գրուած չենք գտներ, թէ որչափ եւս ապրեցաւ Ստեփանոս Սալմաստեցին նոր աթոռակիցներ աւելցնելէն ետքը։ Դաւրիժեցին 1467'ին կաթողիկոսներուն գլուխ կ'անցընէ Միքայէլ Սեբաստացին* (ԴԱՎ.

338), *որ կրնար առնուիլ իբրեւ Ստեփանոսի մահուան թուական։ Ալիշան տեղ մը Ստեփանոսը* 1551 *կամ* 1552*'ին վախճանած կ'ենթադրէ Էջմիածինի մէջ* (ԱՐՐ.231), *մինչ Ստեփանոս հազիւ թէ այն տարին դարձած ըլլար իւր աթոռը. իսկ այլուր կենդանի կ'ենթադրէ մինչեւ* 1564, *Կաֆա գրուած յիշատակարանի մը վրայ հիմնուելով* (ԱՐՐ. 230)։ *Կամենիցի յիշատակարաններուն մէջ ալ* 1566 *սեպտեմբեր* 1*'ին կը գրուի ՚ի կաթողիկոսութեան տեառն տէր Ստեփանոսի* (ԲԺՇ. 143), *որ յարմար կուգայ Դավրիժեցիէն քաղուած թուականին* (ԴԱՎ. 335)։ *Այս թուականներուն դէմ իբր դժուարութիւն կը նկատուի Միքայէլ Սեբաստացիի* 1562*'ին, իբրեւ բուն կաթողիկոս և իւր կողակով Աբգար Եւդոկիացին Հռոմ ղրկելու ձեռնարկը, ուսկից չատեր կը հետեւցնեն Միքայէլի բուն գահակալ ըլլալը, և անկէ ալ Ստեփանոսի մեռած ըլլալը։ Այդ է սովորաբար ընդունուած դրութիւնը, որով Չամչեան Ստեփանոսը մեռած կը դնէ* 1555 *թուականին, այսինքն իբրեւ անցեալ ժամանակ, Հռոմէ դառնալէ ետքը* (ՉԱՄ. Գ. 519), *իսկ սովորական ցուցակը* 1547*'ին կը վերջացնէ անոր կաթողիկոսութիւնը* (ԺԱՄ. 636) *որ Հռոմ երթալէն ալ առաջ կ'իյնայ։ Սակայն Կաֆայի և Կամենեցի յիշատակարանները յստակ են, և Ստեփանոսը կենդանի և կաթողիկոս կը ճանչնան մինչեւ* 1566։ *Եւ ոչ ալ կրնանք Ստեփանոսը այդ թուականներուն հրաժարուած և գործէ քաշուած ըսել, վասնզի Կաֆայի յիշատակագիրը Ստեփանոսէ զատ կը յիշէ և այլ կաթողիկոսն, որոց անուանն ոչ գիտացաք, կ'ըսէ, և ոչ գրեցաք* (ԱՐՐ. 230), *և գիտենք թէ այդ թուականին Ստեփանոսի հետ կաթողիկոսակից կը գտնուէին Միքայէլ Ա և Բարսեղ Գ և Գրիգոր ԺԲ։ Մենք պէտք կը զգանք այդ վկայութիւններուն այժ տալ, և համաձայն Դավրիժեցիին ժամանակագրութեան* 1567*'էն առաջ չանցրնել Միքայէլի բուն գահակալութիւնը* (ԴԱՎ. 338)։ *Այդ դրութեամբ պէտք կ'ըլլայ ըսել, թէ Միքայէլ կամ ներքին գժտութիւններէ և արտաքին նեղութիւններէ ստիպուած, և կամ նոր ձեռնարկներ յաջողցնելու դիտմամբ, պահ մը թողուց Էջմիածինի բնակութիւնը, և իւր ծննդավայրը Սեբաստիա քաշուեցաւ, որ Գետադարձի ալ հայրապետանոցը եղած էր* (§ 857), *բայց միշտ պահելով և պաշտպանելով իւր աստիճանը և գործունէութիւնը։ Միւս կողմէ Ստեփանոս ալ տարիքը առած և տկարացած ըլլալով, պարտաւորուեցաւ գործերը թողուլ Նոր Վաղարշապատեցի աթոռակիցներուն ձեռքը, որոց երիցագոյնն էր Բարսեղ, և այդ տեսակէտով* 1563*'ին գրող յիշատակագիր մը կըրցաւ պարզապէս գրել ՚ի հայրապետութեան տեառն Բարսեղի* (ԱՐՐ. 230)։ *Սակայն մեր տեսութեամբ Միքայէլ Սեբաստիոյ մէջ և Բարսեղ Էջմիածինի մէջ ազատօրէն գործելով ալ՝ բուն գահակալ չէին կրնար նկատուիլ, ցորչափ կենդանի էր Ստեփանոս և իւր իրաւունքը կը պահէր կանոնաւորապէս։ Այդ պատճառով Ստեփանոսի անունին ներքեւ պիտի չարունակենք պատմել մինչեւ* 1567 *կատարուած գործերը, և Միքայէլի գործունէութեան մէկ մասը։*

**ԱՂԹԱՄԱՐ ԵՒ ԱՂՈՒԱՆՔ**

**1556.** *Երեւանեցին* 1557*'ին դնելով Միքայէլի կաթողիկոսութիւնը, որ Դավրիժեցիէն Վաղարշապատեցի աթոռակիցներուն համար տրուած թուականն է* (ԴԱՎ. 338), *կը ներկայէ զայն իբրեւ զօրաւոր կամքի տէր անձ, որ կրցաւ Աղուանից և Աղթամարի կաթողիկոսներուն յաւակնութիւնները զսպել, և Նախաղեօ, կ'ըսէ, ծմլաց շնչուկս Աղուանից և Աղթամարայ կաթողիկոսացն* (ՉԱՄ. 20)։ *Որոշ չէ Նախաղեօ բառին իմաստը, թէ Երեւանեցիին նշանակած* 1557*'էն առաջ կատարուած գործի մը վրայ պիտի իմանանք, զի Միքայէլ* 1545*'է իվեր աթոռակից էր* (§ 1549), *թէ ոչ* 1567*'ին բուն գահակալ ըլլալէն ետքը կատարուած առաջին գործ պիտի հասկնանք։ Միքայէլի վերագրուած գործը Էջմիածինի աթոռին անմիջական իրաւասութեանց սահմաններուն պաշտպանութիւնն է, զոր Երեւանեցին քաղած է Մայրաթոռի մէջ պահուած գրութիւններէ և աւանդական յիշատակներէ։ Աղուանից կաթողիկոսը ուզած է իրեն սահմաններուն կցել Նախիջեւան, Գեղարքունի, Ղափան, Ազատեւ և Լօռի գաւառները, `իսկ Աղթամար ալ ձեռնարկած է իւրացնել Խոյ, Սալ-*

*մաստ, Վան, Ամիդ, Արճէշ, Խլաթ, Մուշ և Բաղէշ գաւառները* (ՋԱՄ·20)։ *Միքայէլ բուռն կերպով ընդդիմացած է, և Պարսից ինքնակալութեան դիմելով* զըւ տաղմ մի*, այսինքն զօրաւոր հրովարտակ ստացած է Շահ Թահմազէն, թէ Գանձակ, Պարտաւ, Աղստեւ, Լօռի, Ջակամ, Նախիջեւան, Գեղարքունի, Ղափան, Խոյ և Սալմաստ,* էջմիածնի վիճակն *են* (ՋԱՄ·78)։ *Հրովարտակին թուականը չյիշեր, և մեզ հնար չէ ստուգել, միայն թէ՝* «որ է ԺԶ ՌԶ թուոյն Աւրամ Նորոգ, եհան զըւ տաղմ մի *բացատրութիւնը* (ՋԱՄ·20), 1557'*ին կամ քիչ առքը կը ցուցնէ հրովարտակին ստացութիւնը, և պարագաները կը համեմատին Սիւլէյմանի արշաւանքին ժամանակներուն* (§ 1554)։ *Երկու սահմանակից աէրութեանց մէջ եղած արշաւանքները և գրաւումները՝ առիթ պիտի ընծայէին եկեղեցական իշխանութեանց ալ սահմաններուն շփոթութեան, և անշուշտ այդ եղած է Աղուանից և Աղթամարի կաթողիկոսներուն սահմաններին ընդարձակելու համարձակութիւն տուող պարագան։ Աղուանից աթոռը ի բնէ հպատակ էր Հայոց գլխաւոր աթոռին. սակայն տիրող շփոթութեանց պատճառով, Հայոց հայրապետութեան երկար ատեն պանդխտութեան մէջ գտնուելուն, և Էջմիածին դառնալէն ետքը կերպ կերպ դժուարութեանց ենթարկուելուն երեւէն՝ ամէն յարաբերութիւններ խանգարուած էին,* վասն որոյ չէ զարման, որ եթէ մեր տօղեն, որ զԱղուանիցն թէս մօտեն ԲԷ որդեն էլեն (ՋԱՄ․ 78)։ *Որոշակի չենք կրնար ճշդել թէ Աղուանից կաթողիկոսներէն որն էր, որուն հետ գործ ունեցաւ Միքայէլ. իսկ Աղթամարի կաթողիկոսներէն ոտնձգութիւն ընողը եղած կ'ըլլայ Գրիգոր Սէֆէտինեան,* Փոքր *մականուանեալ՝ երիտասարդութեանը պատճառով* (ՕՕ ԲԻՋ․1197), *որ* 1542'*էն* 1610, 68 *տարի պաշտօն վարած է յաջորդելով Գրիգորիս Աղթամարցի եղբօրը, որ այս կողմէն նշանաւոր եղած է Աղթամարի աթոռին վրայ* (ԱՂԹ·7), *ինչպէս Յովհաննէս Թլկուրանցին Սսոյ աթոռին վրայ* (§ 1525)։ *Ցիշենք անգամ մը եւս թէ որչափ ալ Միքայէլ մեծ գործունէութիւն ունեցած ըլլայ, հարկաւ անձամբ Պարսից արքունիքն ալ դեգերելով, սակայն իբր բուռն գահակալ գործած չէ, զի կենդանի էր և իւր աթոռին վրայ կը գտնուէր Սալմաստեցին։*

ԱԲԳԱՐ ԵԻԴՈԿԻԱՑԻ

**1557**․ *Միքայէլի անունին պատիւ բերող ձեռնարկներէն մեծագոյնը տպագրութեան գործին զարկ տալու համար ունեցած մասնակցութիւնն է։ Միքայէլ աթոռակից կաթողիկոս* 1562'*ին Սեբաստիա կը գտնուէր, բայց թէ երբ եկած էր, դժուար է ճշդել, ինչպէս նաեւ գալուն շարժառիթը որոշել, զոր կասկածով միայն նշանակեցինք* (§ 1555)։ *Բայց անհաւանական չէ ըսել, թէ ուղղակի ազգային ձեռնարկներու համար եկած ըլլայ, նոյն իսկ Սալմաստեցիին հետ խորհրդակցութեամբ* (§ 1551), *և այնտեղէ աւելի յաջող միջոցներ գտնելու ակնկալութեամբ։ Միքայէլ յարաբերութեան կը մտնէ Աբգար Եւդոկիացի կոչուած անձին հետ, որդի Ամիր պէկի, սովորաբար Սաֆար կամ Սէֆէր կոչուած* (ՑԻՇ·256), *իբրեւ յարմարագոյն անձ այդ նպատակին, թէ իւր միջոցներով և թէ յաջողակ ձիրքերով։ Աբգարի որդին Սուլթան կամ Սուլթանշահ, իւր հօրը վրայ տեղեկութիւն տալ ուզելով կը հաստատէ թէ նա թագաւորազուն էր Սենեքերիմ Արծրունիի ցեղէն* (§ 824), *և ճիւղագրութիւն կազմելու համար Աբգարէ կ'իջնէ Տրդատ, անկէ Գագիկ Կարսեցին, անկէ Սենեքերիմ Սեբաստացին, և անկէ իւր հօր Աբգարի,* անարժան համարելով տալ զանուանս մի բան մեզ է յԱբգարայ մինչ իւր *հայրը* (ՑԻՇ·256)։ *Իսկ այս ճիւղագրութիւնը հաստատած կ'ըլլայ Միքայէլ՝ Սեբաստիոյ մէջ առնելով* ժողով բազում եպիսկոպոսաց և երիցանց և վարդապետաց և իշխանաց հանճարոց, *և ամէնէն կնքուած վկայագիր մը կազմելով։ Վկայողներուն մէջէն յանուանէ կը յիշուին, Երուսաղէմի պատրիարք Անդրէասը, վանահայր եպիսկոպոսներ՝ Բարսեղ Ս. Հախիխմէի, Քրիստափոր Ս. Անանայի, Աստուածատուր Այրի վանքի, Պետրոս Ս. Մարտիրոսի, ու Թադէոս Ս. Առաքելոց, թեմակալ եպիսկոպոսներ՝ Յովսէփ Պրծառի, Անդրէաս Ամասիոյ, Սրապիոն Բալուայ ու Յովհաննէս Անկիւրիոյ, միաբան եպիսկոպոս-*

ներ՝ Սամուէլ Երուսաղէմէ, Մխիթար Էջմիածինէ, Խաչատուր ու Քրիստափոր։ Վարդապետներ՝ Յովհաննէս Ս. Յովհաննու և Գրիգոր, քահանաներ՝ Ղազար Ս. Նշանի ու Սահակ աւագերէց, երեսփոխան Յովհաննէս Ս. Մեննայի, և մանկտաւագներ՝ Գրիգոր ու Տոլվաթ։ Նկատելով որ այդ անուններ խիստ անկարգ կերպով շարուած են բնագիրին մէջ (ՑԻՇ. 256), և թէ Անդրէաս պատրիարք Սեբաստիա չէ գացած, և 1560'ին արդէն Երուսաղէմ վերադարձած է (§ 1546), ամենայն հաւանականութեամբ կը հետեւցնենք թէ Միքայէլ կաթողիկոսի նախագահութեամբ օրինաւոր ժողով կազմուած չէ Սեբաստիոյ մէջ, այլ միայն կաթողիկոսի տուած վկայագիրին ներքեւ Աբգար հետզհետէ նոր վկաներ աւելցուցած և կնիքներ ժողված է։ Իսկ իւր հօր և իւր թագաւորական սերունդը յաւակնոտ թեթեւամտութիւն մը կ'երեւի, կամ թէ Եւրոպացւոց աչքին փոշի փչելու միջոց մը, ինչպէս մեր օրերն ալ տեսանք 1878'ին Ռուսիա ղրկուած պատգամաւոր եպիսկոպոսին վրայ։ Կ'երեւի թէ Աբգար Ամիրպէկեան ալ այդ տեսակ դիտումներ ունեցած է։

**ԱԲԳԱՐ Ի ՀՌՈՄ**

**1558.** Միքայէլ 1562 Մայիս 20 թուականով երկու յանձնարարականներ կու տայ Աբգարին՝ Հռոմի պապին ուղղուած, որ էր Պիոս Դ, և իբր ընծայ կը յանձնէ միւռոն, խաչ ոսկի, մատանի օրհնեալ, Ս. Թէոդորոսի մասունք, և հայարնակ տեղերու և վանքերու ցուցակ մը, և Աբգար կը մեկնի, իւր որդւոյն Սուլթանի (ԿԱԹ. 152), և Աղեքսանդր քահանայի ընկերակցութեամբ (ԿԱԹ. 157), որ Աբգարի ծառայ կը կոչուի (ԿԱԹ. 152), անոր ձեռնասունը ըլլալուն։ Իբրեւ փաստ և իբրեւ հիմ յարաբերութեանց կը յանձնէ Դաշանց Թուղթէն օրինակ մը, խնդրելով որ անոր պարունակութիւնը վերահաստատուի։ Աբգար պարտաւոր էր Կիպրոսի և Վենետիկի ճամբով Հռոմ հասնիլ։ Վենետիկ ոչ միայն քաղաքական, այլեւ տպագրական ձեռնարկին կեդրոնը պիտի ըլլար իւր միջոցներով, իսկ Հռոմ իւր հաւանութեամբ պիտի արտօնէր Վենետիկցիները և բոլոր Լատինները այդ Արեւելցիներուն օգնելու, հաստատելով թէ ճշմարիտ և ընդունելի քրիստոնեաներ են։ Աբգարի ճանապարհորդութեան պարագաները չեն յիշուած, և անծանօթ մնացած են Միքայէլի ալ, որ Սեբաստիայէ Էջմիածին դառնալէ ետքը 1563 ապրիլ 1 հինգշաբթի օր, նոր նամակ մը կը գրէ պապին, իրեն պատուիրակներուն վրայ լուր փնտռելով։ Այդ առթիւ Աբգարը ճանչցնելու համար կը յայտնէ, թէ երկու ձեռքով յաջողակ և ձախը իբրեւ աջ գործածող մէկն է, և կը յաւելու թէ ոչ միայն ի Տաճկաց, այլ առաւելագոյն եւս ի չարաց քրիստոնէից վախնալով, նորահնար նշանագիրներ գործածած է, զորս նա միայն ճանաչէ (ԿԱԹ. 153)։ Անշուշտ Աբգարի Վենետիկի մէջ ուշանալը, Վենետիկէ և Էջմիածին լուր հասցնելու դժուարութիւնը, պատճառ եղած են Միքայէլի և Մայրաթոռին իրենց պատուիրակէն տեղեկութիւն չունենալուն։ Գուցէ Աբգար խորհած է առանց Հռոմ երթալու ալ, Վենետիկի մէջ իւր ձեռնարկը յաջողցնել, սակայն վերջիվերջոյ ստիպուած է երթալ, Լատին հաւատացեալներուն մօտ ընդունելութիւն գտնելու համար։

**ԵՐԹԱԼՈՒՆ ՆՇԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ**

**1559.** Այստեղ ալ հռոմէադաւաններ ամէն ճիգ կը թափեն հաստատելու համար թէ Աբգարի պատուիրակութեան բուն նպատակը Հռոմի հետ կրօնական միաբանութիւնն ու պապական իշխանութեան հպատակութիւնն էր, ինչպէս դիտել տուած էինք Սալմաստեցիին ուղեւորութեան առթիւ ալ (§ 1551)։ Իսկ մենք պիտի յայտարարենք, թէ Հայեր երբեք այդ միաբանութիւնը իրենց նպատակ չնկատեցին, այլ Արեւմուտքի զօրաւորութենէն և զարգացումէն հրապուրուելով, այն կողմէ օժանդակութիւն գտնելու յոյսը փայփայեցին, և զայն ստանալու համար հպատակութեան կամ միաբանութեան արտաքին յայտարարութիւններ ընելէ չի քաշուեցան, գործնականապէս Արեւմտեանները հաճեցնելու և շահելու, և ներքնապէս անոնք ալ կատարեալ քրիստոնեայ և հիմնական կէտերու մէջ իրենց համամիտ ըմբռնած ըլլալնուն համար։ Միքայէլի երկրորդ նամակին մէջ յայտնի կերպով կը տեսնուի այդ ոճը, միաբանութիւնը և հպա-

տակութիւնը կը յիշուի միայն, «չէ յետ ուղղութեան է ծերութենէ սորա» (ԿԱԹ. 152): Աբգարի որդին ալ իրենց յանձնուած պաշտօնին նպատակը բացատրած ատեն կ'ըսէ, թէ այն եղած է. 1. «Առաջին Դաշինս», այսինքն Դաշանց Թուղթը, և «զառաջին երդմանսն նորոգել», ուր աւելի Հայոց աթոռին իրաւունքները կը բացատրուին: 2. Իմանալ «զհետս Հռոմայեցւոց, թէ որպէս կան ընդ Հայս»: 3. Լատինները յօժարեցնել է «ի փրկութեան վերանորոգել Հայոց»: 4. Միջնորդել, որպէսզի դիւրութիւն ընծայուի «հայրապետացն մեր, ճանապարհ հորդել ի Հռոմ» (ՑԻՇ. 258): Ինչպէս կը տեսնուի եկեղեցական միութիւնը նպատակ չէ, այլ Խաչակիրներու ժամանակին կազմուած գաղափարն է, որ տակաւին կը տիրէ, թէ Արեւմուտք պապերու յորդորներուն զօրութեամբ պիտի զինուի, և Արեւելք պիտի ազատուի Իսլամական տիրապետութենէ, որ բացառապէս կը ծանրանար Հայերուն վրայ: Բաց աստի Արեւմուտք պիտի ընձեռէր նաեւ զարգացման միջոցները, որոնց կարգին առաջին և գլխաւոր և կատարելապէս հիանալի կը նկատուէր տպագրութեան նորահնար արուեստը, ինչչափ ալ Աբգարի որդին առաջնակարգ տեղ չտայ այդ նպատակին: Աբգար իր ընկերներով Հռոմ եկած պիտի ըլլայ 1563'ին վերջերը: Առաջին գործը եղած է անշուշտ Պիոս Դ պապին դիմել պէտք եղած յանձարարականները ստանալու, ներկայացնելով Միքայէլի առաջին գիրերը, որոնք տակաւին մեզի ծանօթ չեն, բայց այդ գիրերը չեն բաւած կատարեալ համոզում գոյացնելու համար, և Աբգարէ պահանջուած է Հայոց եկեղեցւոյն դաւանութիւնը գրով ներկայացնել: Արդ պէտք է դիտել, որ եթէ Միքայէլի նպատակը դաւանական ըլլար, այդպիսի գիր մը ինքն կազմած և տուած պիտի ըլլար, և դարձեալ թէ այդպիսի միաբանութեան համար քանի մը եպիսկոպոսներու և վարդապետներու, և ոչ թէ պարզ աշխարհականի մը պիտի տրուէր պատուիրակութեան պաշտօնը: Աբգար պարտաւոր էր համակերպիլ պահանջուած պայմանին, որպէսզի իր նպատակին հասնի, և այդպիսի գրուած մը կը գտնուի այսօր, 1565 նոյեմբեր 10 «յաւուր չորեքշաբթու» (ԿԱԹ. 158), զոր մենք հարկ կը զգանք 1563 կարդալ, ձեռագիրին կամ տպագիրին մէջ սխալմունք ենթադրելով: Իբր զի 1563'ին և ոչ 1565'ին չորեքշաբթիի կը հանդիպի նոյեմբեր 10 ամսաթիւը, և զի Պիոս Դ, որուն անունը կը յիշուի, արդէն վախճանած էր 1565 նոյեմբեր 10'էն, եւս և զի մինչեւ 1565'ին վերջը չէր կրնար ուշանալ դաւանութիւն ներկայելու պայմանը, քանի որ նոյն տարին, արդէն շատ գործեր կատարուած էին Հռոմի մէջ ինպաստ Հայոց: Ըստ այսմ ուրիշ տեղ 1564 նոյեմբեր 8 թուական դրուած ըլլալը (ՁԱՄ. Գ. 524), կամայական ուղղութիւն մը կը տեսնուի: Հայերու նպաստաւոր գործերու մէջ յիշենք, Հռոմ գտնուող Հայերու համար «օթեւան, որ է հիւրանոց» մը հաստատուիլը (ՑԻՇ. 256), կամ լաւ եւս՝ նորոգուիլը (ՕՑ ԱՄՍ. 322), Պիոս Դ պապէն հրաման ելլալը, հայերէն «նոր գիրս շինելու» համար, և գիրերուն հանդիսապէս պապին ներկայացուիլը (ՑԻՇ. 260), և այդ գիրերով 1565 տարւոյ համար «խառնաշփոթ տօմարէ» հրատարակուած ըլլալը, նոյնիսկ «Ի թանակէ գիրն» կամ տառագիրն ալ յիշելով (ՑԻՇ. 257), և վերջապէս Վենետիկ փոխադրուելով նոյն 1565 տարին Սաղմոս մը տպագրելը (ԼԵՕ. 96): Այս ամէն բաղդատութիւններ կը ստիպեն հաստատել թէ Աբգարի դաւանական գիրը ոչ 1565 և ոչ 1564'ին, այլ 1563 նոյեմբեր 10'ին գրուած պէտք է ըլլայ:

**ԱԲԳԱՐԻ ԴԱՒԱՆԱԳԻՐԸ**

**1560**. Աբգարի տուած դաւանական գրուածոյն վերջը եղած յայտարարութիւնը, որով նա կ'ընդունի «զերեւելոյ շնորհս Պետրոսի, և զայր աթոռակալ Հռոմայ գլուխ և հովիւ ամենայն աշխարհի և քահանայից» (ԿԱԹ. 157), հռոմէադաւաններու գրիչին ներքեւ ապացուցական փաստ մը կը դառնայ, առանց մտաբերելու որ Աբգար դպիրի և Աղեքսանդր քահանայի մը կազմած գրութիւնը բնաւ հեղինակութիւն չկրնար նկատուիլ եկեղեցւոյ մը պաշտօնական դաւանութիւնը հաստատելու, մինչ իրենք ալ պարզապէս «ի զետս ընթերցանելեաց» գրած ըլլալնին կը յայտնեն (ԿԱԹ. 157): Միւս կողմէն այդ գրութեան մէջ, որոշակի ըսուած է, թէ «զերես ձեր օտանհո-

զայս առնեմ, այժմէն է շնէկէոյ, զԿոստանդէ-նուպօլսէ և զնէֆեսոսէ (ԿԱԹ. 154), որով բացարձակապէս դուրս կը թողուի Քաղկեդոնի ժողովը քաղկեդոնիկ վարդապետութեան հետ, և զարմանալի է որ Հռոմ կրցած է լռութեամբ ընդունիլ այդ կէտը։ Միեւնոյն գրուածին մէջ կը յայտարարուի, թէ է զօրութն զխոստովանութեան և զՀռոմ ու ուղղափառ է էր (ԿԱԹ. 154), և թէ ուսեալ մաքուր է թղթոյ Ծննդեան Տեառն, և թէ հաղորդէմ եկեղեցական տեառնէ, որով Հայ ծէսին սեփական կէտերը կը պաշտպանէին Հռոմի դէմ (ԿԱԹ. 155), այնպէս որ Պալճեան ալ կը փափաքի ենթադրել, որ Աբգար համաձայնելով համաքրիստոնէութեան, նոյնը ըստ ամենայն մաքուր ընդունած և ընդունելի ըլլայ (ԿԱԹ. 158), այսինքն իր դաւանագիրը ուղղած ըլլայ։ Բայց ամէն առթի մէջ Աբգարի դաւանագիրը երբեք իբր փաստ ծառայող գրուած մը չէ, նախ զի գրողը բնաւ հեղինակութիւն չունի, և երկրորդ որ պարունակութիւնը ամբողջովին հռոմէադաւան չէ, այլ միայն պատեհութեան համեմատ, և պապը հաճեցնելու համար գիր մըն է, բարոյական ճնշման և օտար թելադրութեան ներքեւ պատրաստուած։ Իսկ Պիոս Դ գործնական և գործունեայ մարդ, գոհ եղած է պապական իշխանութեան մասին հաստուած մը տեսնելով, միացածներուն վրայ աչք գոցել, որպէսզի ներքին Արեւելքի մէջ իր ազդեցութեան դուռ մը բացուի, ուսկից մանելէն ետքը դիւրին էր հետզհետէ պայմանները ու պահանջները աւելցնել։ Այս եղած է միշտ պապական դրութեան հետեւած կերպը։ Աստ մէկ տեսակն էր Հայերուն ալ բռնած կերպը, բերանացի կամ գրաւոր յայտարարութիւնները առատացնելով և պապերը հաճեցնելով՝ ակնկալեալ օժանդակութեանց և դիւրութեանց ետեւէ ըլլալ, առանց բնաւ հոգ տանելու միեւնոյն յայտարարութիւնները գործնականապէս յարգելու կամ իրենց եկեղեցական դրութիւնը այլայլելու։ Շողոքորթ ընթացքի լուսաւոր նշան մը պէտք է նկատել Պիոս պապը, Պետրոս Չորրորդ անուանելը (ՑԻՇ. 260)։ Այս փոխադարձ ընթացքին հետեւանքն է, որ Հռոմի մէջ չարունակ Հայերու դարձեր կ'արձանագրուին, որոնք տեղի պիտի չունենային, եթէ անգամ մը իսկապէս և իրապէս դարձի եկած ըլլային հռոմէադաւաններու իմացած կերպով, կամ թէ հայադաւան եկեղեցին հռոմէադաւան եղած կամ դարձած ըլլար, ինչպէս կը սիրեն պնդել, պատահական գրուածներու պաշտօնական հեղինակութիւն ընծայելով։

**1561**. Աբգարի բռնած ընթացքը փոքրիշատէ արդիւնք մը ունեցաւ, բայց բուն նպատակին չհասաւ, Հայերու ազատութեան կամ քաղաքական դիւրութեան համար որեւէ ձեռնարկ չեղաւ, միայն դիւրութիւն ընծայուեցաւ Հռոմի մէջ դեգերող անտերունջ փախստականներուն յատուկ հիւրանոց մը սահմանել, և Աբգարի պատիւներ ցուցնել՝ զի զօրն Փէոս արար համարձակ հանդէս, և առաջի խոսան ամբոխին համբարձեալ զերես Աբգարի, լսաւ, թէ է Հայոց Բոլորոմն է Ամ Թ (ՑԻՇ. 258)։ Աբգարի Սուլթանշահ որդին ալ իր պաշտպանութեան ներքեւ առաւ, կոչելով զայն Մարկանտոն, այսինքն է Մարկոս Անտոնիոս, և զայն ուսման դրաւ է Պետրոսու, և Հայերուն հոգածութեան համար պաշտպան կարտինալ մը նշանակեց (ՑԻՇ. 250), և երեք հրաման շինելոյ նոր տէրս (ՑԻՇ. 260), և Աբգարին հրամայեց ետ դառնալ առ պատրիարքն Միքայէլ, ու զայն Հռոմ բերել որ բերան առ բերան խօսելով իմանայ զանցս Հայոցն (ՑԻՇ. 258)։ Աբգարի որդին մնաց Հռոմ, և եղաւ Հայոց հիւրանոցին տեսուչը. իսկ ինքն Աբգար Վենետիկ անցաւ, պապին կողմէ իրեն տրուած ընկերով, որ էր Նորընծայ եպիսկոպոս սա (ՑԻՇ. 258)։ Աբգար և ուղեկիցը Վենետիկ գտնուեցան 1563'ին ի Բովանդակութեան Սրբեցման Բոտէն, այսինքն Հերոնիմոս Բրիօլի դուքսին օրով, ուր տպեց Սաղմոսը, Գառնեցիի օրինակին վրայ (ՑԻՇ. 262), որ և վերջացաւ 1566 Մայիս ԺԶ, օրն ուրբաթ, ԺԲ ժամ (ՑԻՇ. 263), այլ պէտք է ԺԷ կարդալ, զի ուրբաթը 17'ին կը հանդիպի։ Այդ Սաղմոսը իբր առաջին տպագրուած հայերէն գիրք ընդունուած էր 1512'ի և 1513'ի հրատարակութիւնները չի ճանչցուած (§ 1527), և կրնար իսկ կերպով մը նոյնպէս նկատուիլ, եթէ հաստատուէր առաջիններուն միակտուր փայտեայ կաղա-

ԱԲԳԱՐԻ ԱՐԴԻՒՆՔԸ

պարով տպուած ըլլալը հաստատափոններու նման, թէպէտ այդ ենթադրութիւնը այլեւս դուրս թողուած է (§ 1527)։ Աբգար վախցաւ Վենետիկէ հեռանալ, լուծել տալ էջմ համբոյր, թէ Տաճկաստան լուծել են իրեն գործը, որ էր Տաճիկներու դէմ Լատիններէ օգնութիւն խնդրելը, և միայն Վենետիկ տպագրութեան գործերը շարունակել։ Իրեն ուղեկից եպիսկոպոսը ճանպայ հանեց պապէն Միքայէլին ղրկուած ընծաներով, որպէսզի զայն Հռոմ առաջնորդէ, բայց այն ալ հիւանդացաւ և մեռաւ, և պապին ընծաները Հռոմ դարձուեցան, և ամենայն ինչ վասն չնորհիւ Աստուծոյ ունայն և անօգուտ եղեն (ՑԻՇ. 258)։ Այս եղաւ Աբգարի պատուիրակութեան ընթացքը մինչեւ 1566 տարին, այսինքն մինչեւ Սալմաստեցիին կաթողիկոսութեան վերջին տարին։ Պատուիրակութեան բոլորովին քաղաքական նպատակ ունեցած ըլլալը անգամ մըն ալ կը հաստատուի՝ Աբգարին Տաճկաստան դառնալու ահէ և երկիւղէն պարագայով։ Իսկ եկեղեցական միաբանութեան համար, կաթողիկոսէն պաշտօնական քայլ մը առնուած չէ, 1563'ին գրուած նամակը այդ նպատակը չյայտներ (ԿԱԹ. 152), Աբգարի դաւանագիրը եկեղեցւոյ կողմէ պաշտօնական գործ չէ (§ 1560), անկէ ետքն ալ ուրիշ պաշտօնական գործ մը կատարուած չէ։ Պիոս Դ, որ Աբգարի գործին ձեռք դնողն էր, 1565'ին վերջերը վախճանած էր, և իրեն յաջորդած էր Պիոս Ե, նախկին մեծ հաւատաքննիչ մը, որ բոլորովին հեռու էր իւր նախորդին զիջողական և յարմարողական ճկունութենէն, որով Աբգարի ալ հնար չէր այլեւս առաջին բանակցութիւնները շարունակել։

**1562.** Ստեփանոս Ե Սալմաստեցիի կեանքը մինչեւ 1566'ի վերջերը, կամ 1567'ի սկիզբները երկարաձգելը պատմական պահանջ մը ցուցուցինք (§ 1555), սակայն անոր

**ՍՏԵՓԱՆՈՍԻ ՄԱՀԸ**

կեանքին վերջին մասին գործունէութենէն բան մը չենք կրնար պատմել, մանաւանդ թէ պիտի ընդունինք թէ ինքն մոռցուած մնալու չափ քաշուած կացութիւն մը կը պահէր, և էջմիածինի գործերուն գլուխը կը գտնուէր Բարսեղ Գ աթոռակից, երբ Միքայէլ Ա Սեբաստիա կը մնար՝ 1561 և 1563 տարիներու միջոցին, և այս վերջինը կը ստանձնէր գլխաւոր գործունէութիւնը, երբ Մայրաթոռ կը դառնար 1563'ին, ուսկից ապրիլ 1'ին երկրորդ նամակ մը կ'ուղղէր Հռոմ (§ 1568)։ Սալմաստեցիին մահուան պարագաներուն մասին ալ որոշակի բան մը չունինք գրելիք, և կ'երեւի թէ ծերութեամբ և տկարութեամբ կեանքը վերջացուցած է։ Սկիզբէն զինքը իբր կրթուած և ուսումնական անձ մը ներկայացուցինք (§ 1549), և իրօք ալ իւր այդ ձիրքերուն արդիւնքը ցուցուց, եթէ ոչ խակապէս և ամբողջապէս անկեալ վիճակը վերականգնելով, գոնէ առաջին անգամ զարթնումի նշան տալով և դէպի զարգացում առաջին քայլն առնելով, Եւրոպական զարգացման հետ յարաբերութեան մտնելով, և անձամբ ալ Իտալիա, Գերմանիա և Լեհաստան ճանպորդելով։ Տպագրական արուեստին Հայոց մէջ առաջին անգամ 1512'ին երեւան գալը, ուղղակի Հայ ոյժերու արդիւնք չերեւար (§ 1527), իսկ Աբգար Եւդոկիացիին ձեռնարկը, որով բացառաբար փառաւորուած է ցարդ Միքայէլ Սեբաստացիին անունը, ժամանակագրական հետազօտութեանց եզրակացութեամբ նշանաւոր բաժին մը կ'ապահովէ Ստեփանոս Սալմաստեցիին, որ թելադրիչ կամ հրահանգիչը եղաւ Միքայէլի Սեբաստիա անցնելուն, և այն տեղէ աւելի դիւրութեամբ գործին աշխատելուն, ինչ որ անհնար պիտի ըլլար էջմիածինի մէջ գործադրել։ Այդ տեսութեամբ պարտք կը զգանք Սալմաստեցիին նշանաւոր և արդիւնաւոր յիշատակութիւն մը ընծայել կաթողիկոսներու շարքին մէջ, և վերջին դարերու զարթնումին նախահայրը և նախասկիզբը ճանչնալ զայն։ Իսկ այդ առթիւ տեղի ունեցած միաբանական երեւոյթներուն մասին հարկ չենք զգար անդրադառնալ, իւր կարգին պարզաբանած ըլլալով՝ թէ՛ Ստեփանոսի ուղեւորութեան (§ 1552), և թէ՛ Աբգարի պատուիրակութեան նշանակութիւնը (§ 1559)։

**1563.** Ստեփանոսի կաթողիկոսութեան 1545'է 1566 քսանամեայ միջոցին տեղի

ունեցած ազգային եղելութիւններ մեծ ու կարեւոր բան մը չեն ներկայեր։ Կիլիկիոյ աթոռին վրայ իրարու կը յաջորդեն Սիմէոն Ուլնեցի 1539'ին, Ղազար Ուլնեցի 1545'ին, որոնց կը յաջորդէ Սսեցի մը, Թորոս Մայսենց 1548'ին, Լեւոնբերդի իշխաններէն։ Թորոս կանուխէն ամուսնացած և Մանէս անուն որդի մը ունեցած էր, որ այրիութենէ ետքը կոյսի հետ կը պսակուի, և այս պատճառաւ Արիստակէս Ուլնեցի վարդապետ՝ կաթողիկոսը կը յանդիմանէ սաստկապէս, այնպէս որ ըսողներ ալ կան թէ [illegible] (ՍԻՍ. 536)։ Թորոս իր Լեւոնբերդը կը քաշուի և հոն կը մեռնի 1553'ին (ՍԻՍ. 534), իսկ կաթողիկոսութեան կը յաջորդէ Խաչատուր Ջորիկ, և անկէ ետքը Խաչատուր Երաժիշտ 1560'ին։ Վերջինս յայտնապէս Ուլնեցի ըսուած է, և Ջորիկին ալ Ուլնեցի ըլլալը կը քաղուի Ուլնեցւոց պաշտպանութեամբ և Սսեցիին վտարմամբ աթոռ բարձրանալէն։ Այսպէս Ուլնեցիներուն յաջորդաբար կաթողիկոսանալը և Սսեցին տապալելը, Ուլնիոյ զօրանալուն և Միացորդ հայ իշխաններուն (1415) Ուլնիոյ մէջ ամփոփուելուն ժամանակը կը ճշդէ։ Վերջին Խաչատուրի պաշտօնը երկար եղած է մինչեւ 1584։ Սոյն միջոցին քաղաքական եղելութիւններն ալ ոչ մի նորութիւն ունեցած չեն Կիլիկիոյ կողմերը, որ վերջնապէս Օսմանեան կայսրութեան նահանգ էր դարձած։ Աղթամարի աթոռին վրայ կը գտնուէր միշտ Գրիգոր Սէյֆէտինեան (§ 1556), որ [illegible] ըսուած է, փոքրիշատէ ուսումնական զարգացման հետամուտ, և ուսում ունեցողներու պաշտպանութիւն ընելուն համար (ՕՕ ԲԻՋ. 1917)։ Երուսաղէմի աթոռը շարունակ վէճերու և հակառակութիւններու ենթարկուած էր, իր ստացութիւնները և շինութիւնները պաշտպանելու համար տեղացի այլազգիներու ոտնձգութիւններուն դէմ, և եթէ այդ մասին յաջողութիւններ ունեցած է, ամէնքն ալ արդիւնք են Անդրէաս Պարոնտէրի անխոնջ և աննկուն աշխատութեանց (§ 1547), որ ամէն մի խնդիրի համար կըրցած է յատուկ կայսերական հրամանագիրներ ձեռք բերել (ԱՍՏ. Ա. 274), նոյն իսկ Կոստանդնուպոլիսէ դառնալէն ետքն ալ (§ 1547)։ Անդրէաս արդիւնաւոր և երկարատեւ պաշտօնավարութիւն ունեցած է մինչեւ 1593, իր վերջին տարիներուն մէջ իրեն օգնական և գործակից և գրեթէ աթոռակից ունենալով, իր եղբօրորդին Դաւիթ Մերտինցին (ԲԱՌ. 52), ինչպէս որ ինքն ալ աթոռակից եղած էր իր հօրեղբօր Աստուածատուր Մերտինցիին (ԲԱՌ. 51)։ Կոստանդնուպոլսոյ պատրիարք Աստուածատուր Եաղուպեանի (§ 1463), 1550'ին յաջորդած էր Ստեփաննոս, և իրեն օրով տեղի ունեցաւ Անդրէաս Պարոնտէրի Կոստանդնուպոլիս գալը (§ 1548), որուն օժանդակ պէտք է ճանչցուի Ստեփաննոս։ Նա թերեւս համամիտ և համակիր ալ գտնուեցաւ Միքայէլ կաթողիկոսի ձեռնարկներուն (§ 1557), թէպէտ մեծ գործակցութիւն չէ կրցած ունենալ, զի 1561'ին մեռած է, և Աբգար Եւդոկիացին ալ Կիպրոսի և ոչ Կոստանդնուպոլսոյ ճամբով գացած էր Վենետիկ (§ 1557)։ Ստեփաննոսի յաջորդած է Տիրատուր Սսեցի, Անկիւրիոյ եպիսկոպոսը, բայց հազիւ երկու տարի կրցած է պաշտօն վարել, և պատրիարքութիւնը անցած է Յակոբ եպիսկոպոսի մը, և իր օրով կատարուած է Աբգարի պատգամաւորութիւնը, որուն ինքն մասնակից եղած չէ, այլ անոր ձեռնտու եղած է, երբ Աբգար իր տպարանը Վենետիկէ Կոստանդնուպոլիս փոխադրեց։ Իսկ Տիրատուր կ'երեւի թէ բնութեամբ ձեռներէց և ձգտումներովը խիզախ անձ մը եղած է, ինչպէս Սսոյ կաթողիկոսութեան խնդիրին մէջ պիտի տեսնուի։

**ՄԻԽՍ ԱԹՈՌՆԵՐ**

**1564**. Գոհունակ զգացումով մը յիշեցինք (§ 1562), թէ Սալմաստեցիին կաթողիկոսութեան միջոցը, ազգային զարգացման առաջին զարթնումի միջոցն եղաւ։ Ինչպէս անհատական, նոյնպէս հանրային կեանքի մէջ ալ վայրկեաններ կան, յորս բարեդէպ պատահարներ ըստ ինքեան անկարեւոր՝ ամենակարեւոր արդիւնքի մը սկզբնապատճառ կը դառնան։ Այսպէս է ներկայ պարագան ալ, զի գիտենք թէ ըստ ինքեան շատ մեծ

**ՋԱՐԹՆՈՒՄԻ ԱՌԱՋԻՆՆԵՐ**

*չէր Սալմաստեցիին բրածը, այլ մեծամեծ հետեւանքներ յառաջ բերաւ։ Ժամանակիս մէջ իրենց ուսումնական ջանքով, թէ ոչ երկասիրութեամբ, նշանաւոր անձերուն գլուխը պէտք է յիշենք դարձեալ Ստեփանոս Սալմաստեցի և Միքայէլ Սեբաստացի կաթողիկոսներուն անունները, անոնց կցելով նաեւ Գրիգորիս Աղթամարցին* (§ 1556)։ *Յիշենք ևս Մաղաքիա Դերջանցի վարդապետը* (§ 1548), *որուն աշխարհաշէն և ազգօգուտ ձեռնարկներէն զատ, բանիբուն և հմուտ անձ մը եղած ըլլալն ալ վկայուած է։ Իրեն գրացի, հաւանաբար և գործակից եղած է Ղուկաս Կեղեցի կամ Խորձենացի վարդապետը, որ յատուկ աշակերտութիւն մըն ալ կազմած է, և իրեն ձեռնասուններէն արժանաւոր կաթողիկոսներ ալ եղած են։ Ղուկաս թողած է տոմարական գրուած մը ոտանաւոր և արձակ խառն գրութեամբ* (ԴԱՎ. 4)։ *Աղթամարի կողմերն ալ ուսմամբ պարապողներու անուններ ունինք, ինչպէս են, Սիմէոն Ապարանցի վարդապետը, որ հմուտ աշակերտներ ալ հասուցած է, որոնցմէ կը յիշուին Կարապետ Վարագցի, Յովհաննէս Խիզանցի, և Յովհաննէս Մաղկող վարդապետները։ Նոյն աշակերտութենէ եղած են Յովհաննէս Կրճօն, և Յովհաննէս Գրագիր վարդապետներ, և Սահակ որ Քերթողաց Քերթող մականունին արժանացած է։ Վարագի մէջ ալ աշակերտութիւն մը կազմած է Մարգար Պարոնտէր եպիսկոպոսը, և իրեն ձեռնասուններէն յիշուած են Զաքարիա Փիլիսոփայ, Կարապետ Ջամալ, և Յովհաննէս Բրգուտենց վարդապետներ, որոնց յօրինած երգերն ու գանձերը կը գտնուին աստեւանդ* (ՕՕ ԲԻՋ. 1197)։ *Ինչպէս կանխեցինք յայտարարել, այդ անունները կը յիշենք ոչ իբրեւ գերազանց հանճարներ, և ոչ իբրեւ ընտիր երկասիրութեանց հեղինակներ, այլ իբր առաջին ռահվիրաներ, որք անհագին անկումէ մը ետքը առաջին շարժումը տուին զարթնումի դարերուն։*

**1565**. *Ժամանակակից ծանօթութիւնները լրացնելու համար յիշենք նաեւ սոյն միջոցին նահատակուած նոր վկաները։ Խոճըշահ անունն երիտասարդ մը, որուն բուն ծննդավայրը չէ յիշուած, Հեռու տեղւոյ գալով Մարգուան կը հասնի* 1541'*ին մէջ օր մը, և հազիւ թէ պանդոկ մը կ'իջնէ ու խօսակցութեան կը մտնէ, իսկոյն աղմուկ մըն է կը սկսի, թէ Խոճըշահ յէշտէ տան* (ՆՈՐ. 378), *իբր թէ իսլամութեան հայհոյած ըլլայ։ Հոն եղողներ կը զայրանան, Ծեծեցին զինք, ու ծեծելով տարան ի դատաւորն, երկու ձեռքն յետին կապած։ Դատաւորին առջեւ ոչինչ կ'օգտէ Խոճըշահի բողոքը, ուրացութեան կը հրաւիրուի որ պատիժէ ազատի, և պարգեւներ ալ կը խոստացուին, բայց Խոճըշահ կը մերժէ յայտարարելով թէ ինքն աւելին ալ ունի* (ՆՈՐ. 380)։ *Ասոր վրայ կատաղելով մահուան վճիռ կը հանեն և հրապարակին վրայ կրակի նետելով կը նահատակեն* (ՆՈՐ. 382)։ *Սարգիս Մելիտինացի վկայի մը արձանագրութիւնը կը պահուի Զմիւռնիոյ եկեղեցւոյն բակը, որուն մէջ ըսուած է, թէ Սարգիս յատենի համարձակի, և Քծ հաւատէն նահատակի, բայց ուրիշ մանրամասնութիւններ գրուած չեն։ Նահատակութիւնը եղած է Նոր կիրակիի երեքշաբթի օրը՝ ապրիլ* 15'*ին հանդիպած տարին։ Իսկ թուականը յամ հազար հայկեան թուի, թերի է օրինակին մէջ* (ՔՕՍ. Ա. 82), *և կրնայ* 1550, 1561 *և* 1572 *թուականներուն յարմարիլ անխտրաբար։ Հրատարակիչներ* 1550'*ին կը դնեն* (ՆՈՐ. 383), *բայց յարմարագոյն է գոնէ* 1561'*ին իմանալ, զի Հայոց* 1000 *թուականը* 1551'*ին կը պատասխանէ, և պակաս տողն ալ հարկաւ հազարին վրայ յաւելուած թիւ մը պիտի պարունակէր։ Լոկ համառօտ յիշատակով ծանօթ է ևս Սիլիվրիցի Խռոմ, կամ ուղիղ հնչմամբ՝ Հռիփսիմէ Սիլիվրիցի վկայուհին, զոր նահատակ արին* 1554 *փետրուար* 14, *չորեքշաբթի օր, ընդ արեւելն, Տեառնընդառաջի տօնին* (ՆՈՐ. 385)։ *Վերագոյնդ Թահմազի արշաւանքները պատմածատեննիս, մեծամեծ կոտորածներ ալ տեղի ունեցած ըլլալը յիշեցինք* (§ 1556), *և գիտենք թէ իսլամական սովորութիւն էր ուրացութիւնը առաջարկել հարուածը չի տուած։ Հետեւաբար անթիւ եղած են այդ պարագաներուն մէջ վկայող նահատակներ-*

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՎԿԱՆԵՐ

*րը, որոց ոչ անունները գիտենք և ոչ թիւը։ Թադէոս Սեբաստացիի յիշատակարաններուն մէջ կը գտնենք միայն Արճէշի վանքի առաջնորդ Յակոբ վարդապետի և իւր երեսուն միաբանակից ընկերներուն նահատակութիւնը, որոնք ապստամբին համնիլը իմանալով, գիրքերուան մէջ պատարագի սպաս կը պատրաստէին հաղորդուելու համար, բայց մինչեւ պատրաստէին, և ժամանակն անցած գտնէին, յանկարծ հասան սուսերամերկ Պարսիկներ, և անողորմ կոտորեցին ամէնքն ալ։ Յակոբ Մեծոփեցիի և ընկերներուն նահատակութիւնը տեղի ունեցած է 1552 օգոստոս 14՚ին, Վերափոխման կիրակէին առտուն (ՀԱՑ. 595), և չենք գիտեր թէ ինչու ոմանց անմեկնելի երեւցած է նահատակութեան թուականը (ՆՈՐ. 682)։ Նահատակաց կարգին պէտք է դասել եօթանասուն ապստորդիները, որ մէկ գիրքերուան մէջ սպաննուած են Կարնոյ մէջ 1550՚ին (ՍԱՄ. 176), թէպէտ անյայտ են միան մեղ եղելութեան պարագաները։*

# Տ. ՄԻՔԱՅԷԼ Ա. ՍԵԲԱՍՏԱՑԻ

**ՋԱՆԱՁԱՆ ԱԹՈՌԱԿԻՑՆԵՐ**

**1566**. *Միքայէլի գահակալ կաթողիկոսութիւնը պատմելու սկսած առեննիս, չենք պարտաւորուիր իբրեւ նոր անձ մը զայն ներկայել, զի արդէն բաւական ընդարձակ կերպով անոր գործունէութիւնը տեսանք ու պատմեցինք։ Դավրիժեցին 1567՚ին կը դնէ Միքայէլը իբր առաջին և բուն գահակալ (ԴԱՎ. 338), և Կամենիցի յիշատակարանը մինչեւ 1566 կը հասցնէ Սալմաստեցիի կաթողիկոսութիւնը (ԲԺՇ. 143), և մենք բանաւոր կը սեպենք 1566՚ի վերջերը դնել Սալմաստեցիին մահը և Սեբաստացիին գահակալութիւնը։ Երբոր Միքայէլ գահակալութեան կ՚անցնէր, իրեն աթոռակից կը գտնուէին երկու Վաղարշապատցիներ՝ Բարսեղ Գ. և Գրիգոր ԺԲ (§ 1554)։ Սակայն ասոնցմէ առաջինը կը վախճանէր 1567 տարւոյն մէջ (ԹՈՐ. Բ. 256), և անշուշտ անոր փոխանակելու համար է, որ նոր աթոռակից մը կ՚անուանուի, Ստեփանոս Զ Առնջեցի։ Թէպէտ Դավրիժեցին 1567 տարւոյն ներքեւ չորսին անունն ալ միանգամայն կու տայ, և միասին կը յիշէ Միքայէլ Ա, Բարսեղ Գ, Գրիգոր ԺԲ, և Ստեփանոս Զ կաթողիկոսները (ԴԱՎ. 338), սակայն կը կարծենք թէ նոյն թուականին ներքեւ չորսին ալ գտնուած ըլլալը կ՚ուզէ իմացնել, և ոչ չորսին ալ միատեղ։ Ինչպէս ուրիշ շատ կաթողիկոսներուն, նոյնպէս Առնջեցիին ալ նախընթացին վրայ բան մը պիտի չկարենանք պատմել, և ոչ ալ իւր գործունէութեան մասին բան մը գիտենք, և կ՚երեւի թէ երկարակեաց ալ եղած չէ, վասնզի երբոր Գրիգոր ԺԲ գահակալութեան կ՚անցնի, այլեւս Ստեփանոս Զ՚ի անունը չյորուիր, և ամենայն վստահութեամբ կը հետեւցնենք Միքայէլի կենդանութեան անոր վախճանած ըլլալը, առանց կարենալու ժամանակը ճշդել։ Միքայէլի կաթողիկոսութեան տեւողութիւնն ալ վստահագոյն կերպով Դավրիժեցիէն կը քաղենք, որ միայն 1576՚ին Գրիգոր ԺԲ՚ը իբր գահակալ գլուխ կ՚անցընէ (ԴԱՎ. 338), և հետեւաբար մինչեւ այն տարի ապրած կ՚ըլլայ Միքայէլ, 21 տարի աթոռակցութեամբ և 10 տարի գահակալութեամբ, երկարատեւ և ոչ ապարդիւն կաթողիկոսութիւն վարելով։ Ջամչեան, որ աթոռակցութեամբ մէկտեղ Միքայէլի 22 տարի պաշտօնավարութիւն կու տայ, յայտնի աղբիւր և զօրաւոր փաստ մը չունի, և երբ իբր Միքայէլի յաջորդներ՝ Գրիգոր ԺԲ՚ի 4, և Ստեփանոս Զ՚ի 2, և Թադէոս Բ՚ի 9 տարի կը վերագրէ (ՋԱՄ. Գ. 525), յայտնապէս կը հակառակի Դավրիժեցիին, որ մինչեւ 1593 կենդանի կ՚ենթադրէ Գրիգոր ԺԲ՚ը (ԴԱՎ. 338), ինչ որ յիշատակարաններով ալ կը հաստատուի։ Երեւանեցիին չարակարգութիւնն ալ չփոթ է երբոր կը գրէ, ընէ տէր Միքայէլն, տէր Բարսեղ, տէր Գրիգոր, և տէր Ստեփանոս, միեւնոյն 1567*

*թուականին ներքև* (ՋԱՄ. 20), *զի Բարսեղ և Ստեփանոս ղիպի տէր Միխայէլ կենդանի չէին։ Սովորական ցուցակն ալ աւելի յաջող չէ, երբոր իբր իրարու յաջորդներ կը նշանակէ* 1547 *Միքայէլ Ա*, 1557 *Բարսեղ Գ*, 1563 *Գրիգոր ԺԲ*, 1573 *Ստեփանոս Զ*, 1575 *Թադէոս Բ*, 1584 *Առաքել Ա* (ԺԱՄ. 637)։ *Գահակալներու գաւազանը միայն Ստեփանոս Ե, Միքայէլ Ա. և Գրիգոր ԺԲ կաթողիկոսները պէտք է պահէ չարքին մէջ, քանի որ միացեալներ իբր լոկ աթոռակիցներ՝ չեն կրնար կաթողիկոսութեան յաջորդական գաւազանին անցնիլ։*

**1567**. *Սալմաստեցիին մահուան թուականին զուգընթաց եղաւ սուլտան Սիւլէյմանի մահը*, 1566 *սեպտեմբեր 6'ին, Ծիկէթի պաշարման առեն, Հունգարիոյ մէջ, և 24'ին սուլտան Սէլիմ Բ, Սիւլէյմանի որդին, իւր գահակալութեան հանդէսը կը կատարէր Կոստանդնուպոլսոյ մէջ։ Պարսից շահը Թահմազ կը փութար դեսպանութեամբ Կոստանդնուպոլիս յղել Երեւանի կուսակալ Շահքուլի սուլտանը, առատ և թանկագին ընծաներով, և երկու տէրութեանց մէջ հաշտութեան դաշինքը կը նորոգուէր* (ԺՈԻ. 156), *որով խաղաղութեամբ կ'անցնէր Միքայէլի գահակալ կաթողիկոսութեան տասնամեայն, քանի որ Օսմանեանց և Պարսից պատերազմները անագան նորոգուեցան* 1578'*ին, Միքայէլի մահուընէ ետքը։ Ցիշատակարաններու և ծանօթութեանց նուազութիւնը կը ստիպէ մեզ լռութեամբ անցնել բովանդակ տասնամեայն, թէպէտ Միքայէլի եռանդն ու կարողութիւնը կը յորդորեն մեզ հաւատալ, թէ նա բոլորովին անգործ ու ապարդիւն անցուցած չէ իւր կաթողիկոսութիւնը։ Հնար չէ նաև ենթադրել որ խզուած ըլլան Միքայէլի և իւր յղած պատգամաւոր Աբգարի յարաբերութիւնները, թէպէտ այդ մասին ալ ստոյգ տեղեկութիւններ կը պակսին։ Աբգար* 1565'*ին Վենետիկ անցած էր, ինչպէս յիշեցինք* (§ 1561), *ուր* 1253'*էն ի վեր Հայերու յատուկ տուն կամ հիւրանոց մը կը գտնուէր* (ՎԵՆ. 144), *Հայ վերակացուի և Հայ եպիսկոպոսի հսկողութեան ներքև, որոնցմէ* 1561'*ին կը*

ՋԱՆԱՋԱՆ ԴԷՊՔԵՐ

*յիշուի Նիկողայոս* (ՎԵՆ. 336), *իսկ Աբգարի եկած տարին կը գտնուէր Մելքիսեդեկ եպիսկոպոս* (ՑԻՇ. 263)։ *Աբգար ժամանակ մըն ալ այնտեղ մնաց, վախնալով Թուրքիա դառնալ, որովհետեւ այնտեղ լսուած էր իւր Եւրոպա երթալուն բուն նպատակը* (§ 1561)։ *Աբգարի որդին կը գրէ թէ հայրը է փոքոնլոստոնո էր, և իբրև ինքզինքը արդարացնելու միջոց հնոքեցոսն ն ոբոր ըղտոմոն ֆրոց* (ՑԻՇ. 258), *որպէս զի զայն ցուցնէ իբրև իւր ուղևորութեան բուն նպատակը։ Պատմեցինք թէ զանց ըրաւ Միքայէլը անձամբ Հռոմ տանելու համար ստացած յանձնարարութիւնը, և իւր ուղեկից լատին եպիսկոպոսը ճամբայ հանեց, որուն մահուամբը գործը անհետեւանք մնաց* (§ 1561)։ *Մենք կը կասկածինք թէ մի գուցէ Աբգարի վախն ալ ճարտար դարձուածք մը ըլլայ կաթողիկոսին Հռոմ գալը խափանելու համար, զի Պիոս Ե'ի անձը հիմնապէս կը փոփոխէր Աբգարի տեսութիւնները։ Տրիտենդեան ժողովը նոր փակուած էր* 1563'*ին*, 18 *տարի տեւելէն ետքը, և Պիոս Ե, նախկին մեծ հաւատաքննիչը, ամենայն զօրութեամբ անոր կանոններուն գործադրութեան ձեռնարկած էր, և Վենետիկի հանրապետութիւնն ալ կատարելապէս հպատակած էր նոյն կանոններուն։ Այդ խստութեան հետեւանքն էր անողոքելի ուղղութիւն մը, որուն դրժուարաւ պիտի հնազանդէր Աբգարի միտքը, և հաւանաբար չէ ուզած կաթողիկոսը վտանգաւոր դիրքի մէջ դնել։ Ինքն Աբգար անձամբ ալ կրեց այդ դրութեան նեղութիւնը, չկարենալով ազատօրէն հրատարակութեան տալ Հայոց ծիսական գիրքերը, որոնց մէջ դիտողութեան տեղի կը գտնէին թէ Հռոմի և թէ Վենետիկի գրաքննիչները։ Միայն Սաղմոսը կրցաւ տպագրել, և իւր տպագրական կազմածները լրացնելով Վենետիկի մէջ, գոյքերը հաւաքեց և Կոստանդնուպոլիս եկաւ, իբր յարմարագոյն կեդրոն տպագրական ձեռնարկին, պետական շրջանակներու առջեւ ալ զինքն արդարացնելով, թէ ճոն տյս պոտճոսնս ֆնոցնող նժ է Ֆոսնֆրսպոն* (ՑԻՇ. 258)։ *Անստոյգ զրոյց մը կայ թէ Կոստանդնուպոլսոյ մէջ նախ ձերբակալուած, բայց տպագրական կազմածովը արդարանալով ազատ թողուած*

*ըլլայ, և անկէ ետքը իւր տպագրական գործարանը հաստատած ընդ հովանեաւ Ս. Նիկողայոս եկեղեցւոյն Հայոց* (ՑԻՆ. 261), *այսինքն է Վլանկայի Ս. Նիկողայոս եկեղեցւոյն քակը կամ մօտը* (11 ԱՄՍ. 472)։

**1568.** *Որոշակի նշանակուած չենք գտներ թէ Աբգար ինչչափ ատեն Վենետիկ մնաց և երբ Կոստանդնուպոլիս հասաւ։ Գիտենք թէ 1568'ին տպագրած է տօնացոյցը, տաղարանը, ժամագիրքը և պատարագամատոյցը* (ՑԻՆ. 262), *բայց Մաղաքիա Ճէվահիրճեան դպիր 1567'էն պատրաստ կը յիշէ Աբգարի տպարանը, ուր եղեւ ըստամբէայ, այսինքն պատմագիր, և տպեցաւ գործ ներհականութեան դպրոց* (ՑԻՆ. 261)։ *Աբգար դպրին որ Հեթանոսագործութեան իբր ընկերակից կը յիշուի իւր Բոթողոսի Անտոնեան Սալիթան տպագրողին անունը* (ՑԻՆ. 262), *բայց պէտք չէ որդին ալ Կոստանդնուպոլիս եկած կարծել, վասն զի ինքն իրեն համար կը վկայէ, թէ հօրը մեռնելէն ետքը որ ի Հռոմ անուն է գտեալ տանս այս յեռամբ հօր կարդինալաց* (ՑԻՆ. 258)։ *Նկատի առնելով Աբգարին կրած առաջին դժուարութիւնները և տպարան մը հաստատելու պայմանները, գոնէ 1566'ին Աբգարը Վենետիկէ մեկնած պէտք է ըսենք։ Երեք տարիի չափ տեւած կ'ըլլայ Աբգարի Կոստանդնուպոլսոյ մէջ՝ ունեցած գործունէութիւնը, ուսկից յետոյ 1569'ին կ'երթայ Էջմիածին Միքայէլ կաթողիկոսի մօտ* (ՑԻՆ. 262), *որուն կարգադրութեամբ մեկնած էր Սեբաստիայէ 7 տարի առաջ* (§ 1557)։ *Որովհետեւ տպագրական արդիւնաւորութիւնը Կոստանդնուպոլսոյ մէջ կը դադարի, օրէն էր հետեւցնել թէ Աբգար իւր տպարանին կազմածներովը փոխադրուած ըլլայ Էջմիածին, սակայն ոչ մի յիշատակ և ոչ մի արդիւնք չունինք այդ միջոցին մէջ Էջմիածինի մէջ տպարան մը գտնուած ըլլալուն, որով չենք համարձակիր այդ եւ սութեան վրայ պնդել, թէպէտ առանց անոր ալ դժուար կ'ըլլայ մեկնել Էջմիածին երթալուն նպատակը։ Միւս կողմէն բացարձակ պարտք մըն ալ էր Աբգարի իւր գործունէութեան արդասիքը ներկայել և յանձնել անոր, որ այդ նպատակին հովանաւորն ու կարգադրողն եղած էր։ Պատմական յիշատակներու, նոյնիսկ թերթեւ ակնարկներու պակասութեան մէջ, չկարենալով որոշակի բան մը ըսել, ենթադրական վիճակի մէջ կը թողունք Աբգարի Էջմիածին անցնելուն և Միքայէլի վերջին օրերուն արդիւնքները։ Սակայն այն քիչն ալ որ երկուքին վրայ գիտենք, բաւական են գովութեամբ և օրհնութեամբ յիշատակել անոնց անունները, և գիրենք նկատել իբր առաջին գործիչներ տպագրական արուեստին Հայոց մէջ տարածուելուն, քանի որ 1512'ին տպագրութիւնները Հայ գործունէութենէ դուրս և Հայ յարաբերութիւններէ անկախ երեւոյթներ եղան* (§ 1527)։ *Եւ ասով կը փակենք Միքայէլ Սեբաստացիի կաթողիկոսութեան ժամանակը։*

# Տ. ԳՐԻԳՈՐ ԺԲ. ՎԱՂԱՐՇԱՊԱՏԵՑԻ

**1569.** *Երբոր Միքայէլ կը վախճանէր 1576'ին, միայն Գրիգոր կը մնար անոր մօտ աթոռակից, զի Բարսեղ Գ և Ստեփանոս Ձ վախճանած էին արդէն* (§ 1586), *և հետեւաբար նոյնին իսկ Գրիգոր կը լինէր բուն գահակալ կաթողիկոսութեան* (ԴԱՎ. 338), *համաձայն այն ատեն ընդունուած սովորութեան, որով յաջորդութիւնը կ'որոշուէր, ոչ թէ նոր ընտրութեամբ, այլ նախորդին կամօքով։ Գրիգոր ինքն ալ արդէն ծերացեալ էր, վասնզի 1583'ին 85 տարեկան եղած ըլլալը գրուած է* (ԱՐՐ. 232), *և 1576'ին արդէն 78 տարեկան եղած կ'ըլլայ, և որովհետեւ 1557'էն աթոռակցութեան կոչուած էր* (§ 1554), *կը հետեւի թէ 59 տարեկան եղած ատեն այդ աստիճանին բարձ-*

ԱԲԳԱՐԻ ՎԵՐՋԸ

ՏԵԽՈՂՈՒԹԻՒՆ ԵՒ ԱԹՈՌԱԿԻՑՆԵՐ

բացած էր։ Ինչ ինչ յիշատակարաններուն մէջ 1575'էն կը կարդանք ի հայրապետութեան տէր Գրէգոր կաթողիկոսին (ԹՈՐ. Բ. 260), կամ ի հայրապետութեան տեառն Գրէգորի (ԹՈՐ. Բ. 410), սակայն այդ յիշատակներ չեն սորվեր մեզ Դավրիժեցիին թուականէն աւելի կանխել Գրիգորի գահակալութիւնը, քանի որ գիտենք թէ յիշատակագիրներ անխտիր գահակալը կամ աթոռակիցը կը նշանակեն իբր բուն կաթողիկոս։ Միւս կողմէն նկատելով Գրիգորի տարիքը, և հետեւելով սովորական դարձած ձեւին, զարմանալի պիտի չերեւի այլ եւս տեսնալ, որ Գրիգոր անմիջապէս իրեն երկու աթոռակիցներ կ'ընտրէ միեւնոյն 1576 տարին, որք են Թադէոս Բ և Առաքել Ա (ԴԱՎ. 238), այս երկրորդը ի փեղջին Էջմիածնի (ԴԱՎ. 1), և անշուշտ առաջինն ալ Վաղարշապատեցի ծննդեամբ կամ բնակութեամբ, քանի որ ուրիշ տեղացի ըլլալը նշանակուած չէ, ինչպէս յիշուած էր Սալմաստեցիին, Սեբաստացիին և Ամբնջեցիին համար (ԴԱՎ. 238)։ Աթոռակիցներու յատուկ գործունէութեան մաս կազմել սկսած էին նաեւ գաղթականութեանց հետ յարաբերութիւնները, կրկնակի նպատակով՝ թէ անոնց հսկելու, և թէ անոնցմէ կամ անոնց ձեռքով Մայրաթոռին համար քաղաքական և նիւթական օգնութիւններ հայթայթելու։ Իրաւ այս նպատակով նուիրակներ ալ կրնային գրկուիլ, բայց կ'երեւի թէ կաթողիկոսի անունով ճոխանալը, և կաթողիկոսական իշխանութեամբ եկեղեցական ծիսակատարութիւններ և կարգադրութիւններ ալ ընելու իրաւունքը, օգտակար նկատուած էր այդ այցելուներուն արդիւնաւորութիւնն աճեցնելու համար։ Գրիգորի նոր աթոռակիցներէն Թադէոսը, անմիջապէս Էջմիածինէ մեկնած է յիշեալ նպատակով, վասնզի 1577 յուլիս 21'ին Վենետիկ կը գտնուի և կը մասնակցի մեծահանդէս թափօրին, որ կազմուած էր Ճուտէքա (Giudeca) կղզեակին վրայ շինուելիք ուխտի եկեղեցւոյ հիմնարկէքին առթիւ, Վենետիկի թեմակալ պատրիարքէն ետքը առաջին տեղը գրաւելով (ՎԵՆ. 332)։ Այդ առթիւ աւելցնենք թէ հայազգին Անտոն Սուրեան կամ Սուրիացի, որ նշանաւոր եղած էր Վենետիկի մէջ նաւաշինութեան արուեստով (ՎԵՆ. 246), ժամանակին դէմ ալ դեղ մը հնարած էր, և շատեր բժշկած և մահուանէ ազատած (ՎԵՆ. 260), և այդ ժամանակին առթիւ էր որոշուած ուխտի եկեղեցւոյն կառուցումը։ Թադէոսի Վենետիկ գալուն պատճառը որոշակի չէ ցուցուած, բայց այդ ուղեւորութեանց ընդհանուր շարժառիթը յայտնի էր, իսկ կրօնական նպատակ մը ունեցած ըլլալը կը հետեւի պապութեան հետ յարաբերութեան չմնալէն, և Ալիշան ալ կը խոստովանի թէ ու չէ՛ր սրբազանէ և Երէն ի Հռոմ (ԱՐԲ. 231)։ Թադէոսի այցելութիւնը երկարատեւ ալ եղած չէ, վասնզի Վենետիկի մէջ մնալը միայն քանի մի ամիս ցուցուած է (ՎԵՆ. 333), ուսկից պէտք է անցած ըլլայ Լեհաստան (ԱՐԲ. 231), ուր աւելի բազմաթիւ և աւելի կարող էին Հայ գաղթականութիւնները։ Անհնար է մեզ ճշդել թէ որչափ ատեն գաղթականութեանց մէջ դեգերեցաւ Թադէոս Բ, բայց ստոյգ է, որ իւր շրջանը աւարտելով դարձած է Մայրաթոռ, ուր 1583 հոկտեմբեր 21'ին Արգարի որդին Սուլթանշահ, Մարգանտոն կոչուած, խնդրանքի նամակ մը կ'ուղղէ Հռոմէն (ՑԻՇ. 258), որուն վրայ յառաջիկային պիտի խօսինք։

**1570.** Թադէոսի ուղեւորութիւնը գուգընթաց կու գայ երկու սահմանակից իշխանութեանց մէջ պետութեանց մէջ

**ՕՍՄԱՆՑԻՆԵՐ ԵՒ ՊԱՐՍԻԿՆԵՐ**

խաղաղութեան խանգարուելուն, և Հայաստանի մէջ պատերազմի տագնապներուն վերսկսելուն, այնպէս որ անհաւանական չէ ներքին կապակցութիւն մը ճանչնալ երկու եղելութեանց մէջ։ Շահ Թահմազ 53 տարի թագաւորելէն ետքը մեռած էր 1576'ին, դեղակուր եղած (ԺՈՒ. 166), կամ ի թողանէս հեղգեալ (ԶԱՔ. Ա. 11), իրեն յաջորդ ցուցնելով իրեն որդիներէն Հայտարը, զոր նոյն օր սպաննել տուաւ իւր Իսմայիլ եղբայրը, սակայն նա ալ խեղդուեցաւ 1577'ին, տարիուկէս ցափակեաց թագաւորութենէ ետքը, և գահ բարձրացաւ Թահմազի երէց որդին Մուհամմէտ, որ Խուտաբանտա կամ Խիւտապէնտէ կոչուեցաւ։ Պարսկաստանի ներքին խր-

*ռովութիւնները Օսմանցիները քաջալերեցին պատերազմը նորոգելով սահմանին ընդարձակելու: Սուլտան Մուրատ Գ, որ* 1574 *դեկտեմբեր* 21*'ին յաջորդած էր իր հօրը Սէլիմ Բ'ի, Մուսթաֆա փաշան* (ԺՈՒ. 166)*, որ և Լալա փաշա* (ՋԱՔ. Ա. 13)*, հրամանատար նշանակեց, որ* 1578 *յուլիս* 23*'ին առաջին մեծ յաղթութիւն մը տարաւ Ջըլտըրի ճակատամարտին մէջ, և սեպտեմբեր* 8*'ին երկրորդ մըն ալ կատարեց Քանաքի գետեզերքը, և այսպէս հիւսիսային Հայաստան և Կովկասեան գաւառներ Օսմանեանց հպատակեցան, և Երեւան և Էջմիածին ալ նոյն տիրապետութեան անցան: Հայ պատմագիրին համեմատ, Լալա փաշան աւերեաց զԵրեւան և գերեաց* 60,000 *անձինս, և Ֆէրհատ փաշա որ անոր յաջորդեց, շինեաց բերդ յԵրեւան* (ՋԱՔ. Ա. 13): *Այդ նպաստակ էր, որ բազում եկեղեցիք քակեալ, զքարերն ի շինուած բերդին տանէին, և հազիւ Սրկոս Երեւ կոչուած մեծ եկեղեցին ազատուեցաւ Առաքել կաթողիկոսին Ֆէրհատին առջեւ միջնորդելովը, բայց չկրցաւ արգելել զինուորներուն իրենց ձիերով 30 օր եկեղեցւոյ մէջ բնակիլը* (ՍԱՄ. 192): *Մեր նպատակէն դուրս կը սեպենք հետեւիլ Պարսից և Օսմանեանց պատերազմներուն, որոնք երկար տեւեցին: Այդ պատերազմներուն մէջ երկու կողմէն նշանաւոր հանդիսացան Իւզտէմիր Օսման փաշա, որ մանաւոր զօրապետութենէ ետքը Ֆէրհատի յաջորդեց իբր Օսմանեանց հրամանատար, և Համզէ Միրզա, Խուտապէնտէ շահին որդին: Պատերազմները շարունակեցին մինչեւ* 1584*, բայց պատերազմի աղէտէն աւելի սաստիկ եղաւ սովը, որ պատերազմին աւերածներուն և կոտորածներուն երեւէն առաջ եկաւ, և որուն ողբողորմ նկարագիրը կը պատմեն ժամանակակիցներ* (ՍԱՄ. 190): *Օսման փաշա, որ Կոստանդնուպոլիս դարձած էր,* 1585*'ին նոր արշաւանք մը բացաւ Ատրպատականի և ներքին Պարսկաստանի կողմը, բայց ինքն հիւանդութեամբ մեռաւ, և Համզէ քանի մը նշանաւոր յաղթութիւններ տարաւ: Ասոր վրայ Օսմանեանք արշաւանքը նորոգեցին, և վերջապէս Պարսիկներ խոնարհեցան հաշտութիւն խնդրել, որ կնքուեցաւ* 1590 *մայիս* 21*'ին Նէվրուզի օրը, և Լուրիստան, Շէհրիզօր, Շիրուան, Ատրպատական, Երեւան, Վրաստան, և Կովկասեան գաւառներ Օսմանեանց տիրապետութեան ներքեւ մնացին* (ԺՈՒ. 175): *Պարսից արքունիքը անկեալ վիճակ ունեցաւ Մուհամմէտ Խուտապէնտէի օրով, մանաւանդ երբ Համզէ Միրզա ալ սպաննուեցաւ: Անոր յաջորդեց Աբպաս եղբայրը, և գահ ելաւ հօրն ալ օգնելէ ետքը. և սա է հռչակաւոր և Մեծ մականուանեալ Շահաբաս կամ Շահ Աբպաս: Անոր իսկական թագաւորութիւնը հռչակուեցաւ* 1590*'ի դաշնադրութենէն ետքը, թէպէտեւ* 1585*'է սկսելով շատ գործեր անոր անունով կատարուած էին: Նա ինքն ալ եղած է հաշտութիւնը անհրաժեշտ դատողը, անկեալ կացութիւնը վերանորոգելու համար: Աւելորդ է անգամ մըն ալ կրկնել, թէ այդ երկարատեւ պատերազմներու երեսէն կարի աղետալի եղած էր Էջմիածինի կացութիւնը:*

1571. *Քանիցս յիշեցինք թէ Ազարի որդին Սուլթանշահ, Լատիններէն Մարգանտոն կամ Մարկոս Անտոնիոս անունով ճանչցուած,*

ՍՈՒԼԹԱՆՇԱՀԻ ՋԳՏՈՒՄՆԵՐԸ

*Հռոմ մնացած էր իր հօրը մեկնելէն ետքը* (§ 1568)*, և այն տեղ ազգային հիւրանոցին տեսուչ, և ընդհանրապէս փախստական և պանդուխտ և ուխտաւոր Հայոց խնամակալ եղած էր, զոնէ ինքն մեծարանութեամբ կը գովէ այդ մասին իր ունեցած աշխատութիւնը* (ՑԻՇ. 256): *Քսան տարիէ իվեր Հռոմ մնալով ընտելացած և համակերպած էր տեղական պահանջներուն, և իր Նախարողն ըլլալուն համոզմամբ, իշխանական տիտղոսի մըն ալ հետամուտ էր: Այդպիսի տիտղոսի մը համար աւատական կալուածի մը ստացութիւնը էական էր; և այս է անշուշտ իր գրածին իմաստը, „թէ զոքն կանգնեաց տէր ինձ ժառանգութեան իւր՝ կամ շնորհս կամ զբերդս* (ՑԻՇ. 258): *Մենք կը կարծենք թէ պապին ուզելէն աւելի ինքն եղած կ'ըլլայ այդ բանին հետապնդողը, որչափ ալ գիտենք թէ* 1572*'ին Գրիգոր ԺԳ յաջորդած էր Պիոս Ե'ի, և բուռն կերպով կ'աշխատէր Արեւելցիները, և մանաւորապէս Հայերը, հռոմէադաւանութեան շահելու և ասոր համար ամէն տեսակ հրապու-*

րիչ միջոցները ձեռք առած էր։ Կ՚ըսուի թէ Միքայէլ կաթողիկոսէն Աբգարին տրուած վկայագիրը՝ պապական արքունիքին մէջ ներքին համոզում յառաջ բերած չէր, որ Սուլթանշահէն նոր վկայագիր կը պահանջուէր իւր ծագումը արդարացնելու համար՝ կանոնաւոր ազգաբանութեամբ մը։ Սուլթանշահ կը պարտաւորուի զայն ճարելու համար Թադէոս կաթողիկոսին դիմել։ Այդ նամակը կը գտնուի այսօր Անտոնեանց դիւանին մէջ (ՑԻՇ. 255), և մենք ալ անկէ օգտուեցանք Աբգարի վրայօք մանրամասնութիւններ քաղելու (§ 1557)։ Նամակը 1583 հոկտեմբեր 21 շաբաթ օր թուական կը կրէ (ՑԻՇ. 258), սակայն յիշեալ ամսաթիւը երկուշաբթի կը հանդիպի, և շաբաթ օրը կ՚արդարանայ 1581՚ին, որով կամ տարեթիւը կամ ամսաթիւը ուղղելի կը մնայ. բայց հաւանաբար շաբաթ օրուան յիշուիլը շփոթութեան արդիւնք է, և 1583 թուականը պահելու է։ Իսկ ուղղակի Թադէոսի գրելը, հետեւանք է անշուշտ Թադէոսի Իտալիա գալուն, և թերեւս ծանօթութիւն ալ ունենալուն Վենետիկի մէջ (§ 1569), կամ թէ Թադէոսի անունը լսուած ըլլալուն։ Սուլթանշահ կը խնդրէ, որ նոր վկայագիր մը պատրաստուի իրեն թագաւորազարմ ըլլալուն, զոր Թադէոս իւր կնիքով կնքէ, և ուրիշ քան եպիսկոպոսներու ալ կնքել տայ, դնելով զինքեանս ձեռամբ, և զմտաւոր խորհրդոց է ներքոյ կնքոյն։ այսինքն ստորագրութիւն ալ աւելցնելով, և խոստովանաթղթով, այսինքն երդման ներքեւ, որպէս զի յաջողի իրեն քաղաքներ և գիւղեր ունենալ, որ է ըսել իշխանական տիտղոս ստանալ։ Կը յայտարարէ, թէ այս բանը ոչ վասն իմ փառացն, այլ վասն Հայոց, և այն երեց պատճառաց համար, որք են Հռոմ եկող Հայերը խնամել, Հայոց անունը բարձրացնել, և երկրորդ աթոռն Սիոնի, այսինքն Հայաստանի, պատրաստել, որպէս հօրն իմոյ ուխտի (ՑԻՇ. 258), կամ թէ ըսել, Աբգարին գլուխ հանել չկրցած նպատակը իրագործել (§ 1589)։ Նամակը տանելու և վկայագիրը բերելու համար յատուկ պատգամաւոր ալ ճանապայ հանած է, այլ թէ գործը ինչ արդիւնք ունեցած է, յայտնի չէ, կամ թէ ունեցած ալ չէ, զի Սուլթանշահի գործերուն և վախճանին վրայ ուրիշ տեղեկութիւն չունինք։ Նամակին պարունակութիւնը ունայնասիրութեան արդիւնքէ աւելի բան մը չէ, այլ աւելորդ չդատեցինք յիշատակել, իբր ժամանակին գաղափարներուն արտայայտութիւն, թէ ինչպէս Հռոմի հետ յարաբերութիւններ և լատինասէր մերձեցումներ՝ երկրորդ աթոռն Սիոնի նպատակին կը դիմէին։

**ՆՈՐ ՏՈՄԱՐԻ ԿԱԶՄՈՒԻԼԸ**

**1572.** Գրիգոր ԺԳ պապը, զոր անգամ մը յիշեցինք (§ 1571), իւր անունը տուած է նոր տոմարին կազմութեան, որ այժմ ընդհանրացած է Արեւմուտքի մէջ, թէպէտ Արեւելեան եկեղեցիներ և ազգեր տակաւին հին տոմարով կը վարուին, և կ՚արժէ այս մասին բացատրութիւն մը տալ։ Տոմարի վերջին կարգադրութիւնը եղած էր 325՚ին Նիկիոյ ժողովին առեն, զատկական հաշիւը ուղղելու համար։ Այս մասին հիմ բռնուած էր Յուլեան դրութիւնը, տարին 365 օր և 6 ժամ հաշուելով, և քառորդ օրերը չորս տարին մէկ անգամ օր մը հաշուելով, սովորական տարիները 365, և չորրորդ տարիները 366 օր համրել, որով հարիւրամեայ դար մը կ՚ունենար 36,525 օր։ Իսկ Զատկի օրն ալ ճշդելու համար մարտ 21՚ը հաստատուն գիշերահաւասար ընդունուեցաւ, ինչպէս էր 325՚ին, և այդ հիմամբ շինուեցան զատկական ցուցակները, և այլ եւս անոնց վրայ կը քալէին եկեղեցիները, անկախաբար աստղաբաշխական զննութիւններէ։ Սակայն իրօք տարին 365 օր և 6 ժամ չէր, այլ 365 օր, 5 ժամ, 48 վայրկեան, 47 երկվայրկեան և 33 եռվայրկեան, որ տասնորդական դրութեամբ կը գրուի 365,242217, և տարբերութիւնը կ՚ըլլայ մերձաւորաբար 11 վայրկեան իւրաքանչիւր տարի, որ հարիւր տարուան կամ 36524,2217 օրերու վրայ մէկ օրի մօտ տարբերութիւն կու տայ, կամ տասնորդական ձեւով 0,7783։ Այդ տարբերութիւնը դարերու շարունակութեամբ գումարուելով, գիշերահաւասարը խախտած էր, որ այլ եւս մարտ 21՚ին չէր հանդիպեր իսկութեամբ, թէպէտ այնպէս կ՚ըմբռնուէր գործածական ցուցակներու մէջ, և նոյն ցուցակներով ալ կը հաշ-

ռուէին զատիկները։ Կացութիւնը դիտողութեան առարկայ եղած էր դար մը առաջ, բայց անորոշ մնացած, մինչև որ նորէն խնդիրը արծարծեց Ալոյսիոս Լիլիօ (Lilio) Իտալացի աստղաբաշխը, որ այդ մասին լուրջ ուսումնասիրութիւններ կատարած էր։ Լիլիօ 1576'ին մեռաւ առանց գործնական որոշման մը յանգելու։ Գրիգոր ԺԳ պապ խնդիրը ուրիշ հմուտներու հետազօտութեանց յանձնեց, և տեսնուեցաւ որ գիշերահաւասարը 10 օր խախտած էր, և իսկապէս մարտ 11'ին կը հանդիպէր։ Այդ 10 օրերու տարբերութիւնն էր, որ պապին հրամանով ուղղուեցաւ 1582'ին, և հոկտեմբեր ամսուն մէջ, կարեւոր տօներու պակասութեան միջոցին, հոկտեմբեր 4 հինգշաբթիին յաջորդեց հոկտեմբեր 15 ուրբաթ։ Ապագային ալ խախտումը արգիլելու համար որոշուեցաւ, իւրաքանչիւր դարավերջի տարին նահանջն ընել և 365 օր պահել. բայց այսչափն ալ չատ գալուն, որոշուեցաւ նաև իւրաքանչիւր չորրորդ դարավերջի տարին նահանջն ընել, չորրորդ դարավերջ համրելով այն թուականները, որոց հարիւրեակները չորսի բաժանելի են։ Նոր կամ Գրիգորեան տոմարի դրութիւնը նոյն 1582 տարին ընդունեցին Իտալիա, Սպանիա, Լուսիտանիա, Գաղղիա, Բելգիա և Դանիա. 1583'ին Հելուետիոյ համէջադաւանները, 1584'ին Գերմանիոյ համէջադաւանները, 1586'ին Լեհաստան և 1587'ին Հունգարիա։ Իսկ Գերմանիոյ և Հելուետիոյ բողոքականներ անագան ընդունեցան 1700'ին, և Անգլիա, Շուետիա և Նորվեգիա 1752'ին, իսկ գաղթականութիւններն իրենց բնաշխարհին հետ։ Արեւելեան ազգեր և եկեղեցիներ՝ ցարդ կը շարունակեն հին տոմարով վարուիլ, որուն բոլոր տարբերութիւնը, գիշերահաւասարի խախտուելուն միտ չդնելով՝ դարավերջի նահանջը չզեղչելուն վրայ կը կայանայ։ Ամսաթիւի տարբերութիւնը, որ 1582'ին 10 օր էր, նոյն մնաց 1600'ին, երբ նոր տոմարն ալ նահանջը պահեց, իսկ անկէ ետքը 1700'ին տարբերութիւնը եղաւ 11 օր, 1800'ին 12 օր, և վերջերս 1900'ին 13 օր։ Արեւելեայք աւելորդ նախանձախնդրութիւն մը կը դընեն այս մասին, Արեւմտեայց կամ Լատիններու հետեւած չըլլալու համար, մինչ այն խնդիրը ոչ կրօնական է և ոչ դաւանական, քանի որ երկու կողմերն ալ միեւնոյն կանոնով կը հաշուեն իրենց զատիկը։ Աստ հետ մէկտեղ քանի որ թուականի խնդիրը քաղաքական նշանակութիւն ունի, աւելորդ կը գտնենք Արեւելեան ազգերու համէջադաւան բաժիններուն ցուցած փութկոտութիւնը, երկրին քաղաքական ընթացքէն հեռանալու, և ինքզինքնին Արեւմուտքի յարմարցնելու։ Որչափ ալ այսօր պարզ աչքով ալ կը նշմարուի, որ երկինքի վրայ լրումն լուսնի չկայ, երբ հին տոմարը իւր ցուցակներուն համեմատ լուսնի լրումն կը հաշուէ, սակայն այսչափը չարդարացներ երկրին ընդհանուր հաշիւէն շեղիլը։ Միայն թէ բաղձալի էր, որ պարզապէս բնական և գիտական հաշուոյ խնդիր մը աւելորդ տարաձայնութիւն չաւելցնէր ազգերու և եկեղեցիներու մէջ, և որովհետեւ այժմէն այդ դիտմամբ շարժումներ կը տեսնուին, յուսալի է որ գործը կարգադրութեան մը յանգի, տարբերութիւնը 14 օրուան չբարձրացած, որ տեղի պիտի ունենայ երկու դարէն 2100'ին։

**1573.** Զանազան կողմերէ և զանազան պատճառներով Հռոմ եկող պանդուխտներուն հետ հասած էր նաև այրի քահանայ մը, Յովհաննէս Տէրզնցի, թէպէտ Տէրզինը անծանօթ, որ իր երկու աղջիկները Ամիդի մէջ թողլով Խաչատուր որդւոյն հետ եկած էր բախտ փնտռելու (ՑԻՇ. 249)։ Սուլթանշահի հետ մտերմանալով Հռոմի մէջ տպարան մը կազմակերպելու հետեւեցաւ, և անկէ ելած առաջին գործն է, Տոմար Գրիգորեան յաւիտենական, որ եղև [illegible] և այլ [illegible], 1584'ին տպագրըւած (ԼԷՕ. 104)։ Անշուշտ Գրիգոր պապին յատուկ պաշտպանութեամբ կը կատարուէր այդ հրատարակութիւնը, որով պապը իւր տոմարական կազմակերպութիւնը Արեւելքին ալ կ'ուզէր ծանօթացնել, թէպէտ արդիւնք մը ձեռք ձգած չէ։ Պապը Արեւելքին և առանձին Հայերուն վրայ մտադրութիւն դարձնելով, կերպով մը կ'ուզէր անտեղեակ փոխարինել, ինչ որ Արեւմուտքին մէջ բո-

ՀԱՅՈՑ ԴՊՐԱՏՈՒՆ

ղութականնութեամբ իւր իրաւասութենէն ելած էր։ Նոյն այս նպատակով խորհեցաւ Հայոց յատուկ և անոնց անունով եկեղեցական դպրատուն մը բանալ Հռոմի մէջ, ամբողջապէս պապական գանձուն ծախքով, որպէս զի այնտեղ պատրաստուին Հայազգի եկեղեցականներ, հռոմէականութեան սկզբունքով սնած և ուսած, և անոնց ձեռքով Հայեր և Հայոց եկեղեցին հռոմէադաւանութեան վերածուի։ Վասնզի թէպէտ իր կոնդակին մէջ կ'ըսէ, թէ Հայոց եկեղեցին յամենայն ժամանակի մեծապատիւ յարգանօք հպատակ էր սրբոյ հայրապետին Հռոմայ, սակայն վերջէն կը յաւելու թէ օտարեցեալ է նոցա մոլորութեանց կոյն (ՋԱՄ. Գ. 526), և այս կերպով կ'ուզէ յատուկ վարժարանի պէտքը առջեւ բերել։ Գործը Հայերուն դիւրընկալ ընելու համար, գովութեամբ կը յիշատակէ Հայ եկեղեցւոյն առաքելական քարոզութեամբ սկսած ըլլալը, և Հայոց բիւրապատիկ հալածանաց և նեղութեանց ներքեւ իրենց քրիստոնէական հաւատքին վրայ հաստատուն մնալը։ Բայց Հայերու հաստատուն պահած հաւատքը հայադաւանութիւնն էր, որով պէտք կ'ըլլայ այդ իմաստով առնել Գրիգոր ԺԳ պապին Հայերուն համար չափազանց գովեստը։ Պապին որոշումը արդիւնք և գործադրութիւն չունեցաւ. կոնդակը 1584 հոկտեմբեր 13 թուական կը կրէր, և ինքն 1585 ապրիլ 10'ին կը մեռնէր, գործին սկզբնաւորութեան իսկ չձեռնարկած։ Գրիգորի մահուանէ ետքը իւր յաջորդները այդ մասին մտադրութիւն չդարձուցին, և միայն Ուրբանոս Ը պապ, երբ 1630'ին առհասարակ ընդհանուր ազգութեանց համար Բրոբականտայի կամ Տարածման դպրատունը հիմնեց, Հայ երիտասարդներ ալ ընդունուեցան, և անոնցմէ ելան հռոմէադաւանութեան նուիրեալ քարոզիչներ, և այնպէս շարունակեց, մինչեւ որ Լեւոն ԺԳ պապ 1883'ին Հայոց յատուկ Լեւոնեան դպրատունը բացաւ Հռոմի մէջ։

**1574.** Գրիգոր ԺԳ պապը Հայերուն վրայ մտադրութիւն դարձնելու յորդորող պարագաներուն գլխաւորը, Հռոմ խռնուող Հայերուն ներկայութիւնն և պաշտպանութեան թախանձանքներն էին, բայց դուրսէն ալ իւր մտադրութիւնը հրաւիրող պարագաներ պակաս չեղան։ Հռոմի հետ յարաբերութիւն մշակողներուն մէջ նախաձեռնարկ դեր մը կը ստանձնէր Սսոյ աթոռը, և Խաչատուր Երամիշտ 1575'ին այդ իմաստով դիմում կ'ընէր Գրիգոր ԺԳ պապին (ԱՁԱ. 108)։

**ՀԱՑՈՑ ՄԱՍԻՆ ԳՈՐԾԵՐ**

Որչափ ալ այդ նամակին մէջ գործածուած արեւելեան չափազանցութիւնները և չողոքորթ նմանութիւնները՝ դաւանական մեկնութեան տանիլը, պարզապէս բորբոքեալ երեւակայութեան արդիւնք ըլլան (ԱՁԱ. 109), սակայն իրողութիւն մըն է՝ եղած դիմումը, որուն նպատակն է միշտ փրկութեան սրբոյն Սիոնի (§ 1571), զոր Ուլնեցի Նոր կազմակերպուող Հայութիւնն ալ (§ 1563) արեւմուտքէն կ'ակնկալէր, հետեւելով Կիլիկեցւոց հնաւանդ նախապաշարեալ գաղափարին (§ 1055)։ Այդ դիմումին իբրեւ արդիւնք պիտի ճանչցուի, պապին կողմէ յատուկ նուիրակի մը Կիլիկիա ղրկուիլը, յարաբերութիւնները ճշդելու և իսկական հռոմէադաւանութեան հաւանեցնելու Հայերը, վասնզի Գրիգոր պապն ալ պէտք չէր անգիտանար Հայերուն շատ շատ անգամներ առատ յայտարարութիւններ գրելը, առանց երբեք իրենց նախնական դիրքէն խախտելու։ Պապերը արդէն Հռոմի մէջ յատուկ Հայերու հոգածու և պաշտպան կարդինալ մը հաստատած էին, որ էր Ցուլիոս-Անտոնիոս Սանսէվէրինօ (di San-Severino), իսկ պատուիրակութեան ընտրուեցաւ Լէոնարդոս Աբելի անուանական եպիսկոպոսը, որ Հռոմէ մեկնեցաւ 1583'ին ուղիղ դէպի Հալէպ, մէկտեղ ունենալով պապէն նամակ մը Խաչատուր կաթողիկոսի անունին (ԿԱԹ. 309), և հաւատոյ դաւանութեան պատճէն մը (ԿԱԹ. 311), որուն համեմատ պիտի հաստատուէր յարաբերութեանց հիմը, և որ անհրաժեշտ պայմանը պիտի ըլլար ակնկալուած օգնութեանց։ Խաչատուր արդէն ծեր մարդ էր աւելի քան զութսուն ամ, երբ իրեն վերէն ընդհանրական և օգնական առաւ Ազարիա Ջուղայեցին, որ անոր կենդանութեան թողում ամէ ծառայեց Սսոյ կաթողիկոսարանին (ԿԱԹ. 312), և անշուշտ այդ պատճառով Ազարիայի անունն ալ Խաչատուրի հետ յիշուած էր

1575'ին՝ պապին ուղղուած նամակին մէջ (ԱՋԱ. 108)։ Լէոնարդոս Արեւելք չհասած Խաչատուր վախճանած էր, և Ազարիա իրեն յաջորդած 1584 փետրուար 25'ին (09 ՕՐԱ. 283), և վասն այլ ազգէն կասոյ՝ և մեր ազգէ մերն՝ Հալէպ գացած էր, երբ այն տեղ իրեն ներկայացաւ պապական նուիրակը բանագնացութեանց նպատակով, և իրր առաջին պայման, Եբեր առաջի [illegible] սուրբ Հռոմայ, զոր հայերէնի թարգմանած էր Գրիգոր Բերիացի սարկաւագ կաթողիկոսարանին (ԿԱԹ. 311)։ Բանակցութիւնները չատ հեչտ եղած պիտի չըլլան, եթէ դիտենք որ անոնք տարի մը չարունակեցին՝ մինչեւ որ ելք մը ունենան։

**ԼԵՈՆԱՐԴՈՍ ՊԱՏՈՒԻՐԱԿ**

**1575.** Լէոնարդոս Հալէպ եղած ատեն լուր կ'առնէ թէ Էջմիածնի կաթողիկոսներէն Առաքել՝ Ամիդ կը գտնուի, և հարկաւ կը տեղեկանայ ալ թէ Էջմիածնի աթոռին դիրքը աւելի բարձր և ազդեցութիւնը աւելի ընդարձակ է քան Սսոյ աթոռը, ուստի անոր հետ ալ յարաբերութեանց կը մտնէ, իր պաշտօնին ու նպատակին կարեւորութիւնը չատցնելու համար։ Այդ առթիւ Լէոնարդոսի գրութեանց մէջ կը յիչուի Գրիգոր ԺԹ կաթողիկոսը 85 տարեկան ծերունի մը, և Առաքել աթոռակից, և Դաւիթ փոխանորդ (ԱՐԱ. 232)։ Թադէոսի անունը յիչուած չէ, ուսկից կը հետեւի թէ Թադէոս Բ Վաղարշապատեցի աթոռակիցը, որ Իտալիա և Լեհաստան ալ գացած էր (§ 1569), արդէն վախճանած էր 1584'ին, Գրիգորի կենդանութեան, որով անտեղի կ'ըլլայ անոր անունը կաթողիկոսական գաւազանին անցըուիլը սովորական ցուցակին մէջ (ԺԱՄ. 637)։ Փակակալ անունով յիչուած Դաւիթն ալ, Գրիգորի նոր աթոռակից Դաւիթն է, որ Տէր ի նոյն գեղջէն Էջմիածնի (ԴԱՎ. 2), որուն կաթողիկոսակից ըլլալը 1586'ին կը դրուի թէ Դավրիժեցիէն (ԴԱՎ. 338) և թէ Երեւանեցիէն (ՋԱՄ. 20)։ Սակայն անհաւանական չէ մինչեւ 1584 բարձրացնել աթոռակցութեան թուականը, նկատելով որ առանց այդ պայմանի անոր անունը Գրիգորի և Առաքելի հետ յիչուած չէր ըլլար. արդէն փակակալի պատուանունն ալ չատ բարձր նչանակութիւն ունէր հին դարերուն մէջ։ Ալիչան կը գրէ թէ Լէոնարդոս երեքէն ալ [illegible] հաւանութեան առած ըլլայ, իր առաջարկներուն համար (ԱՐԱ. 232), սակայն ոչ ինքն և ոչ իր համամիտներէն Վատիկանի դիւանները պրպտողներ, այսպիսի գիրեր ոչ տեսած են և ոչ հրատարակած, որով ենթադրական կը մնայ այս տեղեկութիւնը։ Պատմական յիչատակներ չեն բացատրեր Առաքելի Ամիդ կամ Տիարպէքիր գալուն չարժառիթը։ Պարագաներու մերձեցուցմամբ կը գտնենք, որ 1584 տարին Պարսից և Թուրքաց պատերազմին ընդհատուելուն միջոցն է (§ 1570), և հաւանաբար Առաքել եկած է Ամդեցիներու օգնութեան դիմելու, որոնք լաւ և կարող վիճակ ունէին, և ուր առաջնորդ էր Սրապիոն եպիսկոպոս, Ղուկաս Կեղեցիի աչակերտներէն (§ 1564), որ մեծ հռչակ ունէր թէ իր հմտութեամբ և ազդեցութեամբ, և թէ իր մեծահարուստ ունեւորութեամբ։ Յառաջիկային պիտի տեսնանք՝ այդ առաւելութեանց համար անոր կաթողիկոսութեան հրաւիրուիլը Վաղարչապատեցի Դաւիթէն։ Գուցէ կանուխէն ալ այդ միտքը յղացուած էր, և Առաքել նոյն նպատակով Ամիդ եկած էր, բայց այս անգամ ելք մը չունեցաւ։ Լէոնարդոսի դառնալով անոր Էջմիածնի հետ յարաբերութեանց մասին ստոյգ բան մը ըսել դժուար է։ Նմանապէս Էջմիածին երթալու դիտում ունեցած, և Օսմանեանց նոր արչաւանքին պատճառով արգիլուած ըլլալը (ԱՐՐ. 232), պարզ ենթադրութիւնէ աւելի նչանակութիւն չունի։

**ԱԶԱՐԻԱՅԻ ՆԱՄԱԿՆԵՐԸ**

**1576.** Լէոնարդոսի և Ազարիայի միջեւ կատարուած բանակցութիւնք մինչեւ 1585 չարունակեցին, թէպէտ մանրամասնութիւնք մեզի անծանօթ կը մնան, այլ Գրիգոր սարկաւագ կը վկայէ, թէ միայն յետ յոյժ [illegible] և աղաչելոյ բազում անգամ ի ձեռն պարոնտէր Սեբաստիոյ եպիսկոպոսին, և յետ խորհրդակցելոյ ի [illegible] ընդ եպիսկոպոսացն և երիցանց, այսինքն մեծամասնութեամբ և ոչ միաձայնութեամբ, վերջապէս ընդունեցաւ ստորագրել առաջարկեալ դաւանութիւնը ի ձեռն եպիսկոպոսութեան եկեղեցւոյն Հալպայ (ԿԱԹ.

307)։ Ասոր վրայ Ազարիա Սիս դարձաւ, և այն տեղէ գրուած են երկու նամակներ, մէկը կաթողիկոսին և միւսը եպիսկոպոսներուն կողմէն, ուղղուած Գրիգոր ԺԳ պապին 1585 ապրիլ 10 չաբաթ օր թուականով, որ այն տարին աւագ չաբաթ եղած է, և է նաեւ Գրիգոր ԺԳ պապին մեռած օրը (§ 1573)։ Ազարիա իւր նամակին մէջ կը յայտնէ, թէ կաթողիկոսութեան չանցած ուխտ ունեցած է Հռոմ այցելել, բայց հիմայ այլեւս չկրնար, վախնալով յոյժ մեծ ֆօրջանօց, եթէ բնակութենէն հեռանար։ Անոր համար, Յովհաննէս եպիսկոպոսը կը յղէ իւր տեղը, և անոր հետ Գրիգոր սարկաւագն ալ, առաքել զամայն համար, և Աստուածաշունչ մըն ալ կը ղրկէ բստ այնմ տպագրելու համար, վասնզի գրչագիրներ 200 կամ 300 ֆլորին կ'արժեն և չեն գտնուիր։ Կը յիշէ թէ ստորագրած է ներկայացուած դաւանութիւնը, տեղեկութիւն ունեցած է Նորաֆման փամարէն, բայց թէ չկրնար խախտել յառաջ քան զայլ ազգէք, և կը յաւելու թէ սարկաւագը կու գայ քանի մի փողայով վասն ուսման է Փռանկաստանն (ԿԱԹ. 312)։ Ակնարկներ ունի Դաչանց Թուղթին և Կոստանդեանց ժամանակ Հռոմի հետ յարաբերութեանց մասին, որպէսզի հաստատէ թէ իրենք միշտ Հռոմի միացեալ եղած են, թէպէտեւ կը խոստովանի, թէ բազում մեր նախնիք ու են պահել զայս գործ (ԿԱԹ. 309)։ Այդ յայտարարութեանց նպատակն է պապին սիրտը օգնութեան և նպաստի շարժելու, զի, կ'ըսէ, ամենեքեն եմք գերի ի ներքոյ անօրէն փերանց, որք վասն մեղաց մերոց ամենայն օր տանջեն և զրկեն զմեզ անխնաբար, մինչ մենք տնանկ և աղքատ եմք (ԿԱԹ. 309)։ Իսկ միւս նամակը ստորագրած են Մարտիրոս Աչոտի, Յովհաննէս Զէյթունի, և Ղազար Հալէպի եպիսկոպոսներ, Մըսըրչահ, Լիպարիտ, Յանուշ և Պուտախ Սսոյ իշխաններ, և Յովհաննէս քահանայ Հալէպի։ Ասոնք կը վկայեն թէ Ազարիա Խաչատուրի օգնական եղած է և այժմ իրենց կաթողիկոսն է, և կը խնդրեն որ բստ այնմ ճանչցուի, և կը փակեն միշտ նոյն յանգերգը կրկնելով, թէ մ՛ մոռանաք զմեզ յաղօթս և զտնանկս (ԿԱԹ. 313)։ Շարունակ աղքատ և անանկ ըլլալնին յիշեցնելը՝ կը բացատրէ Կիլիկեցւոց ունեցած ակնկալութիւնը, և Լէոնարդոսի ներշնչած յուսադրութիւնը, և դաւանութիւնը ստորագրելնէն սպասուած հետեւանքը։ Որոշակի պիտի չկարենանք ճշդել թէ ստորագրող Զէյթունի եպիսկոպոսը, կամ թէ ուրիշ Յովհաննէս եպիսկոպոս մըն է Հռոմ երթալիք պատուիրակը։

**ԱԶԱՐԻԱՑԻ ԴԻՒԱՆԱԳԻՐԸ**

1577. Դաւանութեան գիրին մանրամասնութեանց մտնել հարկ չենք տեսներ, զի Հայոց եկեղեցւոյ միտքով և Հայերուն կողմէ չարադրուած գրութիւն մը չէ, այլ կատարեալ հռոմէական միտքով և Հռոմի կողմէ կազմուած դաւանութիւն մը, լատիներէն գրուած, և ապա հայերէնի վերածուած, ինչպէս որ Գրիգոր սարկաւագը կը յայտարարէ, թէ Նորաքմանեցի և քրեցի համաբանութեամբ, որչափ որ կարացի և գիտացայ ի համաբանեալն, զոր տուր ինձ տէր եպիսկոպոս Սէրովբէ ի Ֆրանկէ և յորում լեզուէ, և ես քրեցի ի հայերէն (ԿԱԹ. 307)։ Հետեւաբար Հայ կաթողիկոսի և Հայ եկեղեցականի մը գիտցածին կամ դաւանածին բացատրութիւնը չէ, այլ ստիպմամբ առնուած ստորագրութիւն մըն է, այն ալ տարի մը ձգձգելէ ետքը տրուած, իբրեւ բռնադատեալ պայման մը նեղութեանց հանդէպ պաշտպանութիւն և աղքատութեան հանդէպ օգնութիւն գտնելու ակնկալութեան։ Այլ թէ ինչ արդիւնք ունեցած են, յայտնի չէ. որովհետեւ պատմութեանց մէջ Լէոնարդոսի պատգամաւորութեամբ գալը յիշուած և գրուած է, բայց դառնալէն ետքը որեւէ արդիւնք ունեցած ըլլալը գրուած չէ։ Այս տեղ ալ հռոմէադաւաններ կը կարծեն անջրելի փաստ մը և հաստատութիւն գտած ըլլալ Ազարիայի վկայութեամբ, սակայն չուզելով ալ կրկնել թէ որպիսի ստիպման ներքեւ տուած է Ազարիա իւր ստորագրութիւնը՝ իրեն առջեւը դրուած թուղթին ներքեւ, դիտել պէտք է տանք թէ Ազարիա ոչ Հայոց եկեղեցւոյ հայրապետն է, ոչ Հայ եկեղեցւոյ ներկայացուցիչն է, և ոչ ալ օրինական ժողովով որոշում մը տուող է։ Սսոյ աթոռը բաժանեալ և մասնաւոր աթոռ մըն է, անոր աթոռակալն ալ կարօտու-

թեանց և նեղութեանց լուծին ներքեւ կքած անձ մըն է, որ որեւէ պայմանով մը դիւրութիւն գտնելու հարկին ներքեւ կը հեծէ։ Այսու համակերպ բաւական կ'աշխատի բռնադատիչ հարկէն ազատիլ, և վերջապէս երեք եպիսկոպոսի, չորս աշխարհականի և մէկ քահանայի գիտակցութեամբ պահանջուած ստորագրութիւնը կու տայ, և ոչ թէ ինքնաբերաբար իր միտքը կը յայտնէ։ Այսպիսի անհատական գրութիւն մը ոչ Հայոց եկեղեցիէն բղխած է, և ոչ Հայոց եկեղեցւոյ դաւանութիւնը կը ներկայէ։ Դիտողութիւն մըն ալ պէտք է աւելցնենք, Ազարիայի դաւանութեան ներքեւ Ղազար եպիսկոպոսի և Գրիգոր սարկաւագի 1585 մայիս 1 շաբաթ օր թուականով, Ազարիայի ստորագրութիւնը հաստատելնուն վրայ։ Կ'երեւի թէ Լէոնարդոս ստորագրութիւնը առնելէն երեք շաբաթ ետքը աւելցնել տուած է ստորագրութեան վաւերացումը, ինքն ալ ստորագրած, և Բերիայի լատին նուիրակին ստորագրութիւնն ալ աւելցուցած (ԿԱԹ. 308)։ Վերջապէս նկատելի է որ Ազարիայի անունը Զաքարիա արձանագրուած է պապական դիւանին մէջ (ԿԱԹ. 302), և կ'երեւի թէ անունը ճիշդ գրելու չափ ալ կարեւորութիւն չէ տրուած ձեռք անցուած ստորագրութեան։

**ԱԶԱՐԻԱՅԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ**

**1578.** Շատ աւելի նշանակալից է գործին հետեւանքը։ Լէոնարդոսի և Ազարիայի միջեւ գոյացած համաձայնութեամբ Ազարիայի դիրքը կը խախտուի, և ընդհանուր տժգոհութեան առիթ կը դառնայ, և տարին չանցած Ազարիա հանրութեան կողմէն կը մերժուի, և Տիրատուր Սսեցի, մականուանեալ Գիտնական, որ 1563'ին Կոստանդնուպոլսոյ պատրիարքութենէն ելած էր երկամեայ պաշտօնավարութենէ ետքը (§ 1563), կաթողիկոս կ'օծուի Սսոյ մէջ 1586 մարտ 20'ին։ Սակայն Տիրատուր ալ երկար ատեն հաճելի չի մնար, և Յովհաննէս Այնթապցի, մականուանեալ Բարեպաշտ, իրեն համամիտներ կը գտնէ, և ինքն ալ կաթողիկոս կ'օծուի Սսոյ մէջ 1588'ին, և այսպէս Կիլիկիոյ մէջ երեք կաթողիկոսներ միանգամայն կը գտնուին, իւրաքանչիւրը իրեն համախոհներու շրջանակ մը ունենալով, սակայն Սիս. Յովհաննէսի ձեռք կը մնայ։ Այդ երկպառակութիւններ և բաժանումներ հետեւանք էին Ազարիայի Հռոմի հետ հաստատած յարաբերութեան, և որչափ ալ ցաւալի ըլլայ այդ հետեւանքը, յայտնապէս կը ցուցնէ թէ Կիլիկիա բովանդակ համախոհ չէր Ազարիայի ստորագրած դաւանութեան, և թէ Ազարիայի ըրածը անձնական կամ մասնաւոր գործ մը եղած էր։ Ազարիա Կիլիկիոյ մէջ իր դիրքը վերանորոգելէ յուսահատ, Կոստանդնուպոլիս կու գայ, ուր Յակոբ պատրիարքէն ետքը (§ 1563) նստած էին, Յովհաննէս Տիարպէքիրցի 1573'ին, Թովմաս Գաղատացի 1581'ին, Սարգիս Ովնեցի 1587'ին, և Յովհաննէս Ովնեցի 1590'ին։ Ազարիայի Կոստանդնուպոլիս գալուն թուականը յայտնի չէ, բայց հարկաւ կանուխէն եկած պիտի ըլլայ, որ ատեն ունենար կողմնակիցներ և պաշտպաններ շահելու համար, մինչեւ որ 1591'ին Յովհաննէսը հեռացնելով Կոստանդնուպոլսոյ պատրիարքութիւնը ձեռք անցուց, իսկապէս Սսոյ աթոռը դառնալու միտքը յաջողցնելու համար։ Հազիւ տարի մը կը մնայ Կոստանդնուպոլիս, և 1592'ին Սիս կը դառնայ, և կը յաջողի Տիրատուրին և Յովհաննէսին վրայ ալ զօրանալ, և Սսոյ աթոռին տիրանալ, այլ եւս մոռնալով Հռոմն և Հռոմի յարաբերութիւնները։ Ազարիայի կաթողիկոսութեան այդ վերջին մասը իբր 10 տարի տեւած է, և վախճանած է 1601 յունիս 2'ին (ՉԱՄ. Գ. 536), և գերեզմանը կը գտնուի Բերիոյ եկեղեցւոյն մէջ, նշանակալից արձանագրութեամբ մը, [illegible] (08 ԱՐԾ. 598), որ կարծես թէ կ'ուզէ առաջին անգամ տեղաւորուելուն ակնարկել։ Քանի որ Ազարիայի գերեզմանը յստակ արձանագրութեամբ մէջտեղ է, չենք գիտեր ինչ աղբիւրէ առած են հռոմէականք կարծել, թէ Ազարիա [illegible] (ՄԻՍ. 218)։ Ազարիայի մահէն ետքը Յովհաննէս Այնթապցի նորէն Սիսի մէջ զօրացաւ և գրաւեց, և թերեւս անոր մահէն ալ առաջ, զի Ազարիա Բերիոյ մէջ կեդրոնացած կ'ապրէր, ուր և մեռաւ, և իբրեւ ուրոյն աթոռ

մը առնելով նոր յաջորդ ալ ունեցաւ, Պետրոս Կարկառեցին, որ 7 տարի պաշտօնավարեց, և վախճանեցաւ 1608 շաբաթ դառնոյ նոյեմբերին (08 ԱՐՑ. 594), այսինքն է մարտ 22'ին, և գերեզմանը կը մնայ Բերիոյ եկեղեցին։ Յովհաննէս և Պետրոս, և թերևս անկէ ալ առաջ Յովհաննէս և Ազարիա, համերաշխութիւն պահպանեցին, որ իւրաքանչիւրը որոշ շրջանակի մէջ իրաւասութիւն վարէ (ՋԱՄ. Գ. 528), մինչև որ Պետրոս ալ մեռաւ, և 1586'ին սկսած պառակտումը վերջացաւ 22 տարի տեւելէն ետքը, և Յովհաննէս Սյնթապցի միահեծան մնաց Սսոյ աթոռին վրայ, մինչև իւր մահը 1627'ին։

**1579**. Իսկ Կոստանդնուպոլսոյ մէջ Ազարիայի մեկնելէն ետքը 1592'ին նորէն աթոռ բարձրացաւ Սարգիս Թլնեցին, որ երկու տարի առաջ տեղի տուած էր Յովհաննէս Ուլնեցիին (§ 1578), և այս անգամ ալ չորս տարի ետքը տեղի տուաւ Տիրատուր Սսեցիին, որ անգամ մը պատրիարք եղած էր (§ 1563), և վերջերս ալ Սսոյ կաթողիկոսութենէն հեռացուած էր՝ Ազարիայի կրկին զօրանալուն պատճառով, բայց կաթողիկոսական կերպով ճոխանալէ չէր դադարած։ Կրնայ մտածուիլ թէ Սարգիս պատուադիր կերպով տեղի տուած ըլլայ Տիրատուրի, ուսկից ժամանակին առացած էր եպիսկոպոսական ձեռնադրութիւնը (90 ԱՐՑ. 519)։ Տիրատուր այս անգամ ալ երկար պաշտօնավարութիւն չէ ունեցած Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ, զի երեք տարիէ 1599'ին, մայրաքաղաքի մեծամեծները հանին զինքն յաթոռոյ, ուրիշ արժանաւորագոյն մը գտած կարծելով պատրիարքութեան համար (ՋԱՄ. Գ. 535)։ Կիլիկիոյ և Կոստանդնուպոլսոյ վերաբերեալ տեղեկութիւնները կանխեցինք հաւաքել այստեղ, շարայարութիւնները պահելու համար։ Քաղաքական և պետական գործերէն շատ բաներ չունինք պատմել այդ միջոցին, զի կը տեւէր Թուրքաց և Պարսից մէջ հաստատուած 1590'ի հաշտութիւնը (§ 1570), և գրեթէ ամբողջ Հայաստան և Կովկաս Օսմանեանց իշխանութեան ներքև էր դրուած էին, Էջմիածինն ալ միասին։ Սակայն կաթողիկոսներ ուրոյն դիրք մը չէին գրաւեր պետութեան աչքին, որ կը շարունակէր իբր իրմէ ծանուցեալ հոգևոր պետ և ազգապետ ճանչնալ Կոստանդնուպոլսոյ պատրիարքը, և անոր թողուած էր պարտ ու պատշաճ հոգևոր յարաբերութիւնները պահել բոլոր ուրիշ աթոռներու հետ, և և նոյն կարգին՝ Էջմիածինի աթոռին հետ ալ։ Սսեցիներու և Ուլնեցիներու Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ յաջորդաբար բարձրանալը, և նոյնիսկ Ազարիայի և Տիրատուրի Սսոյ կաթողիկոսի անունը վրանին պատրիարքական աթոռը գրաւելը, յայտնի կը ցուցնեն Սսոյ և Կ. Պոլսոյ մէջ տիրող սերտ յարաբերութիւնը, սակայն Էջմիածինի Օսմանեանց տիրապետութեան ներքև անցնիլը, պէտք էր Մայրաթոռի հետ յարաբերութիւնները զօրացնէր, և իրօք ալ այդ արդիւնքը յառաջ եկաւ, և այդ առենէն Կոստանդնուպոլսոյ աթոռը վերջնականապէս և բացառապէս կապուեցաւ Էջմիածինի Մայրաթոռին հետ։

**1580**. Գրիգոր ԺԲ Վաղարշապատեցի կաթողիկոսն ալ՝ երբ իւր կեանքը կնքեց, երբ Օսմանեան հպատակ կը նկատուէր։ Գրիգորի վախճանը որոշակի գրուած չենք գտներ, և պարաւորեալ մանր յիշատակներու բաղդատութենէն պիտի քաղենք թուական մը։ Լէհաստանի յիշատակներուն մէջ կը գտնուի Գրիգորի անունը, թէ 1583'ին կենդանի էր տակաւին, թէպէտ 85 տարեկան ծերունի մը (ԱՐԱ. 232)։ Քիչ ետքը 1585'ին, է կաթողիկոսութեան տէր Գրիգորի կը դնէ Դաւիթ Մարեցի եպիսկոպոսը՝ իւր գրած աւետարանին ժամանակը (ԹՈՐ. Բ. 368), տարի մըն ալ ետքը 1586, նոյն տէր Գրիգոր կենդանի կը ցուցուի Դավրիժեցիին ժամանակագրութեան մէջ (ԴԱՎ. 338)։ Տարի մը ևս ետքը 1587'ին Դաւիթ եպիսկոպոս Գեղամայ երկրէն, որ նոյն ինքն վերոյիշեալ Մարեցին կ'երևի, Խնուսի մէջ ղրիբ եղած ատեն, նոր աւետարան մը կը գրէ է կաթողիկոսութեան տեառն Գրիգորի յաթոռն Էջմիածնի, ճշդելով իսկ թէ այս ամ թուական ամ եղեւ որ Արեւելեան աշխարհն է փոխեալ նոյ, որովհետև

*Կ.ՊՈԼՍՈՅ ԱԹՈՌԸ*

*ԳՐԻԳՈՐԻ ՎԱԽՃԱՆԸ*

Օսմանլուն աղէն լաւ եկեղեցաշէն էր (ԹՈՐ. Բ. 446), և իրօք գիտենք թէ 1577'ին սկսած էին Օսմանեանց արշաւանքները (§ 1570)։ Այդ թուականէն ետքը Գրիգորի անունը տեղ յիշատակարանի չենք հանդիպած, իսկ Դավրիժեցին մինչև 1593 կը յետաձգէ Դաւիթի անունը գլուխ անցընել (ԴԱՎ. 338) որ կրնայ առնուիլ իբր Գրիգորի մահուան թուական։ Արդ 1593'ին Գրիգոր պէտք է 95 տարեկան եղած ըլլար, այնպէս որ այլ եւս անունով միայն կաթողիկոս կրնար ըսուիլ, բոլորովին տկարացած և զառամած վիճակի մէջ, բայց և այնպէս գահակալութիւնը իրաւամբ իւրը կը մնար, թէպէտ աթոռակիցներն ըլլային գործնականապէս կաթողիկոսութիւնը վարողներ։ Դավրիժեցին իւր պատմութեան սկիզբը, առանց թուական յիշելու կը գրէ, թէ ի ժամանակս յայս էր կաթողիկոս սրբոյ աթոռոյն Էջմիածնի, տէր Առաքել (ԴԱՎ. 1), սակայն այսչափով Առաքելը գահակալ կաթողիկոս չենք կրնար ընդունիլ, քանի որ ուրիշ տեղ 1578'ին ալ ի հայրապետութեան տեառն տէր Առաքելին Էջմիածնի սուրբ աթոռոյն (ԹՈՐ. Բ. 435) գրուած կը գտնենք, երբ աներկբայաբար Գրիգոր էր գահակալը։ Յիշատակագիրներ կը սիրեն տալ այն անունը՝ որ գործի գլուխ կը գտնուէր, և Գրիգոր, 80 տարեկան եղած ատենէն կամ աւելի առաջ գործը աթոռակալներուն թողած կ'երեւի։ Ըստ այսմ երբ Առաքելին համար յաւելեալ ու Տէր ըսելէն ետքը կը գրէ, յետ սորա եկաց կաթողիկոս սուրբ Էջմիածնի տէր Դաւիթ (ԴԱՎ. 2), կրնանք Առաքելը ընդունիլ իբր վարիչ, և ոչ գահակալ կաթողիկոսութեան։ Բնական ալ էր որ երիցագոյն աթոռակից Առաքելին մահէն ետքը, աթոռին կառավարութիւնը կ'անցնէր իրմէ ետքը եկող Դաւիթին, որուն աթոռակից անուանուած ըլլալը արդէն գրած ենք (§ 1575)։ Բայց այդ ձեւը չէր արգելեր, որ իրաւամբ և կանոնապէս գահակալ նկատուէր միշտ Գրիգոր, թէպէտ զառամած և բոլորովին գործէ քաշուած, բայց ոչ հրաժարած և ոչ ալ գահընկէց նկատուած։ Զամչեան, և անոր հետեւողութեամբ կազմուած սովորական ցուցակը, Գրիգորի միայն 4 տարի կու տան 1569'էն սկսելով, և Ստեփանոս Զ, Թադէոս Բ, և Առաքել Ա աթոռակիցները գաւազանին կ'անցընեն, և 1586'էն Դաւիթ Վաղարշապատեցին գահակալ կը նշանակեն (ԺԱՄ. 637), մինչ մենք մինչև 1587 Գրիգորը յիշատակուած գտանք։ Ուստի յիշեալ երեքը կաթողիկոսական գաւազանին չենք անցըներ, և Գրիգորի իրաւական կաթողիկոսութիւնը հաւանական հաշուով մը մինչև 1590 կ'երկարաձգենք, այն տեսութեամբ միայն, որ Դաւիթ 1593'ին աթոռակից մը առնելէն առաջ, յամս ինչ կաթողիկոսութիւնը միայնակ վարեաց, լաւ եկեղման ժամանակի և լաւ խորամ կարի (ԴԱՎ. 2)։

---

# Տ. ԴԱՒԻԹ Դ. ՎԱՂԱՐՇԱՊԱՏԵՑԻ

**1585**. Դաւիթի նախընթացէն բաւական բան արդէն ըսած կը գտնուինք, թէ բնիկ էր Էջմիածնի գիւղէն, որ է Վաղարշապատ (ԴԱՎ. 2), թէ Գրիգորէ աթոռակից ընտրուած էր 1584'ին (§ 1575), և թէ Առաքելի մահուանէ ետքը աթոռին վարչութիւնը ձեռք առած էր (§ 1580), մինչ անկէ առաջ իբր փակակալ կամ լուսարարապետ միայն եկեղեցւոյն հոգաբարձութիւնը կը կատարէր (§ 1575)։ Գահակալութեան անցնելն ալ պարագաներու մերձեցուցմամբ հաւանական ցուցուցինք 1590'ին դնել (§ 1580)։ Դաւիթ Վաղարշապատեցին մենք Դաւիթ Դ ըսինք, թէպէտ սովորաբար Դաւիթ Ե գրուած է (ԺԱՄ. 437), որովհետեւ իւր կարգին ցուցուցինք թէ Դաւիթ Դ կարծուածը Ամենայն Հայոց կաթողիկոս մը չէ, այլ Աղթամարի կաթողիկոսն է (§ 1375)։ Գրիգորի վերջին ժամանակները, երբ կաթողիկոսարանի վարիչներն էին Առաքել և Դաւիթ աթոռա-

ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԱԹՈՌԱԿԻՑ

կիցներ, հետզհետէ ծանրացած և դառնացած էր Հայաստանի վիճակը, մանաւանդ Պարսիկներէ նոր առնուած գաւառներու մէջ (§ 1570), որոնց վրայ հինգ Օսմանցի կուսակալներ նշանակուած էին, Թաւրիզ, Երեւան, Գանձակ, Շամախի, և Դարբանդ քաղաքներու մէջ, իսկ Վրաստան հարկատու ազգային իշխաններու ձեռք էր (ԴԱՎ. 1), որոնք երբեմն թագաւոր ալ կը կոչուէին։ Ամէնէն աւելի անտանելի դարձած էր այդ գաւառներուն վրայ դրուած հարկը, որ ուղղակի Մայրաթոռին վրայ ալ կը ծանրանար, և վճարումը անհնարին էր եղած տիրող կարօտութեան երեսէն, այնպէս որ կաթողիկոսը կրցածը վճարելէն ետքը, կը պարտաւորուէր խոյս տալ, «հալածական լինէր և թաքչէր ի [illegible], և հալածական և թափառական կենօք առեն կ'անցընէր» (ԴԱՎ. 2)։ Իբր կացութեան դարման կը մտածէ Դաւիթ իրեն աթոռակից մը առնել, որ դրամ ճարելու օգնէ, և այս պատճառին կը բարձրացնէ Մելքիսեդեկ Գառնեցի եպիսկոպոսը, «այր քաջասէր, և հետեւող նախագահ իշխանութեան», որ կ'աշխատէր կողմնակիցներ ալ ճարելով աթոռակցութիւնը ձեռք ձգել (ԴԱՎ. 21)։ Դաւիթ «այլոյես ՚ի այնլես, կամայ ՚ի յոյլ կամաց» Մելքիսեդեկը օրհնեց 1593'ին (ԴԱՎ. 338), սակայն սպասած դիւրութիւնը չգտաւ, վասնզի եղեն «երկու կաթողիկոսք և երկու մախաղ», և թէ այս և թէ հարկապահանջութեան պատճառներով պարտքերը աճեցան մինչեւ «յիսուն հազար ղուրուշ» (ԴԱՎ. 3)։ Սակայն ղուրուշը այժմեան արժէքով իմանալու չէ, վասնզի այն ատեն իտալական կրօշ դրամին արժէքն ունէր, որ այժմեան զուռուշին քսանեւհինգպատիկն էր։ Կացութեան չբարուոքելուն պատճառով Դաւիթ և Մելքիսեդեկ ալ հաւասարապէս «ի փախստեան և ի թաքստեան կային», և չարունակ տեղ կը փոխէին, առն ալ գիշերայն, չտեսնուելու համար (ԴԱՎ. 3)։ Իբրեւ նպաստ ճարելու միջոց, գուցէ և կայսերական շնորհ առնալու յոյսով, Մելքիսեդեկ անձամբ Կոստանդնուպոլիս գնաց, Տիրատուր Սսեցիի պատրիարքութեան օրով, շուրջ 1598'ին, և լաւ ընդունելութիւն ալ գտաւ, այնպէս որ ազգային մեծամեծներ հրապուրուեցան Տիրատուրը հեռացնել, և զինքն պատրիարք անուանել 1599'ին (§ 1579), բայց Մելքիսեդեկ իւր նպատակին չկրցաւ օգտակար ըլլալ։ Կոստանդնուպոլսեցիք կ'ուզէին իրմով օգտուիլ, ընդհակառակն Մելքիսեդեկ անոնցմէ օգտուելու կ'աշխատէր, ուստի շուտով յարգը կորսնցուց, և տարին չլրացած իսկ 1600'ին, պատրիարքութենէ հանուեցաւ, և պարտաւորուեցաւ Էջմիածին դառնալ, առանց Մայրաթոռին կացութեան դիւրութիւն մը ընծայած ըլլալու։

**1582**. Այստեղ ոմանք երրորդ կաթողիկոս մըն ալ կը յիշեն Աւետիս անունով, առանց ցուցնելու թէ ո՛վ էր և ուստի՞ և ե՞րբ կաթողիկոսութեան բարձրացաւ (11 ԱՄՍ. 5)։

**ԱՒԵՏԻՍ ԱԹՈՌԱԿԻՑ**

Այս անունը անգամ մը հարեւանցի կը յիշէ Զաքարիա Քանաքեռցի (ԶԱՔ. Ա. 50), և անոր յիշատակութիւնը կ'ընէ Գրիգոր Դարանաղեցին ալ (11 ԱՄՍ. 69), սակայն Դավրիժեցին, որ իրեն շատ մօտ ժամանակի պատմութիւնը մանրամասնօրէն կը գրէ, Աւետիս անունով կաթողիկոս մը չճանչնար, և «մինչ էին երկու կաթողիկոսք» (ԴԱՎ. 3), «երկոքին կաթողիկոսքն» (ԴԱՎ. 4), «կաթողիկոսացն երկոցունց» (ԴԱՎ. 6), «կաթողիկոսքն երկոքին» (ԴԱՎ. 8), կը գրէ Դաւիթի և Մելքիսեդեկի անունները տալով, և մենք Դավրիժեցիին վկայութեանը վրայ հիմնուելով, այդ միջոցին Դաւիթի մօտ երկրորդ աթոռակից մը չենք աւելցներ, ուրիշ առիթի թողլով Աւետիսի խնդիրը։

**1583**. Շահաբաս Պարսից թագաւոր, որ Օսմանեանց հետ 1590'ի հաշտութիւնը կնքեց ծանր պայմաններով, բայց իւր տէրութիւնը զօրացնելու դիտմամբ (§ 1570), իրօք ալ խղճի մտօք այդ նպատակին հետեւեցաւ, և հետզհետէ վերակազմեց Պարսկաստանի անկեալ վիճակը։

**ՇԱՀԱԲԱՍԻ ԸՆԹԱՑՔԸ**

Իւր ձեռք առած միջոցներուն մէջ նշանաւոր էր՝ քրիստոնէից և յատկապէս Հայոց հանդէպ ցուցած բարեացակամութիւնը, որով ամէն տեսակ պաշտպանութիւն առատացուց անոնց, կրկին նպատակներով։ Մէկը անոնց առեւտրական և արհեստագիտական յաջողակութիւններով իւր երկիրը ճոխացնել և զօրացնել, և միւսը

*Հայերուն սիրտը իրեն կողմը շահելով՝ Օսմանեանց դէմ կատարելիք ձեռնարկին համար ազդեցիկ օգնականներ շահիլ։ Այս ընթացքին արդիւնքն եղաւ, որ իշխանք և կողմնակալք, մահմետականք և քրիստոնեայք, հետզհետէ սկսան գաղթել Պարսից թագաւորութեան կողմը, զի Երեւան Նախջաւան տէրութեան ձեռքէն զերծեալ է թագաւորութենէն Օսմանցւոց* (ԴԱՎ. 8)։ *Պատմիչը Մահմետականներէն յանուանէ կը յիշէ, Ղազի խան և Հայաթ բէկ Ուլամայօղլի Քուրդ ցեղապետները, որոնք Շահաբասի կողմը անցան, իսկ Վրացի իշխանազուններէն չատեր, Սիմոն խանի բանտարկութենէն և սպանութենէն ետքը Պարսկաստան ապաւինեցան։ Պարսկաստան գաղթող Հայազգի իշխանազուններէն կը յիշուին Սարուխան բէկ և եղբայրը Նազար բէկ Ոսկանապատ գիւղէն, Օղլան քէշիշ և եղբայրը Ղուլու բէկ Հաթերք գիւղէն, Ջալալ բէկ և եղբօրորդիները Խաչէն գաւառէն, Սուջում մելիք Դիզակ աւանէն, Փաշիկ մելիք Քօշիշ գիւղէն, Բաբէն մելիք Բրիտիս գիւղէն, Մելքիսէթ եպիսկոպոս Մելիքզատէ գիւղէն, և Հայկազն մելիք Խանածաղ գիւղէն։ Դիզակի գաւառէն՝ չորս գիւղեր միահաղոյն, և Ագուլիս կամ Գողթն գաւառէն Դաշտ գիւղի ժողովուրդէն երեք տուն ալ խմբովին գաղթեցին, և Շահաբաս բոլոր եկողները սիրով կ'ընդունէր և կը բնակեցնէր Սպահան* (ԴԱՎ. 9), *որ իւր մայրաքաղաքն էր ըրած, և կ'ուզէր շէնցընել։ Այսպէս հետզհետէ կը զօրանար պարսկասէր կողմը, և Դաւիթ ու Մելքիսեդեկ կաթողիկոսներն ալ սկսած էին Շահաբասի սիրելի ըլլալու ձեւեր գործածել, վասն զի կը նախատեսէին թէ Շահն հաստատեալ կալցէ յաշխարհն Հայոց* (ԴԱՎ. 10)։

**ՍՐԱՊԻՈՆ ԱԹՈՌԱԿԻՑ**

**1584.** *Իսկ Շահաբասի գալէն սպասուած ակնկալութեան իրականալուն ժամանակը անորոշ էր, և պէտք էր դրամի և հարկի ստիպողական պէտքին հանդէպ անմիջական դարման մը հոգալ։ Գահակալ ու աթոռակից երկու կաթողիկոսներ կը մտածեն նոր աթոռակից մը աւելցնել, որ թէ գործունէութեամբ և թէ դրամական կարողութեամբ կարենայ զօրաւոր օգնական մը ըլլալ։ Այսպիսի մէկ մը ամէնուն կողմէ վկայուած էր Սրապիոն Ուռհայեցի մեծ վարդապետը, Ամիդի կամ Տիգրակերտի եպիսկոպոս։ Ինքն մեծահարուստ հօր ժառանգ ըլլալով ալ՝ եկեղեցական կոչման նուիրուած էր, և աշակերտած Ղուկաս Կեղեցի վարդապետին* (§ 1564), *որ էր գլուխ ամենայն վարդապետաց ժամանակին, և անկէ ընդունած էր վարդապետական գաւազանը* 1586 *փետրուար* 20'*ին, և յետոյ Տիգրակերտի առաջնորդ եղած, և ինքն ալ նոր աշակերտութիւն բացած, և նշանաւոր վարդապետներ հասուցած։ Այսպէս եղան, Գրիգոր Կեսարացի, Բարսեղ Ամդեցի, Յովհաննէս Ուռհայեցի, Արիստակէս Տարօնեցի, Յովսէփ Հզուեցի, Յովհաննէս Հզուեցի, Յովհաննէս Բաջբերունի և Մովսէս Տաթեւացի։ Ուսումնական զարգացման հետ, ազդեցիկ դիրք մըն ալ շահած էր Սրապիոն նոյնիսկ Հոռոմց և Ասորւոց և Մահմետականաց առջեւ, և ոչ փութայր առնել գործ՝ զոր ինչ և կամէր կենցաղական* (ԴԱՎ. 5)։ *Դաւիթի և Մելքիսեդեկի համար ընտրութիւնը դժուար չեղաւ, և իրենց գրութեամբ Սրապիոնը կաթողիկոսութեան հրաւիրեցին, խոստանալով անոր ձեռքը յանձնել ամէն գործերը, և մեք, կ'ըսեն, միայն մերովք կամօք ի բաց կամք ի կաթողիկոսութենէ և ի տէրողութենէ, բայց այս խօսքերով ոչ թէ իրենց աստիճանէն, այլ միայն գործերը վարելու նախաձեռնութենէ կը հրաժարէին։ Սրապիոն հաւանեցաւ, բայց ոչ թէ յաղագս կաթողիկոսութեան և փառաց, կ'ըսէ Դավրիժեցին, այլ վասն փրկութեան Լուսաւորչեան աթոռոյն, և հասաւ Ջուղայ, ուր եկան զինքն դիմաւորել երկու կաթողիկոսներն, Մանուէլ Հաւուցթառի, Մանուէլ Խորվիրապի և Աստուածատուր Գեղարդի եպիսկոպոսներով, և քանի մը ազգականներով։ Աժոտեղ բանակցութեան կը մտնեն, Սրապիոն չխնայեր ոսկւոյ ինչ եղերական բանս, որուն երկու կաթողիկոսները, և որք կաթողիկոսականքն էին, ոչ հաճեցան, Հաւուցթառեցին ողորմ* [illegible] *և խանգարեաց զաւել և զուել, վերջապէս երկպառակութեան և խռովութեան տիրեց, և Դաւիթ ու Մելքիսեդեկ բանակցութիւնը խզելով Տաթեւի վանքը մեկնեցան։ Սրապիոն Ջուղայի մէջ մնաց, և Ջուղայեցիք*

*անոր խօսքերուն և կարողութեան զմայլելով՝ ջանացին առաջին խորհուրդը լրացնել, և իրենց միտքին համեմատ ուղղեցին զամենայն ժողովուրդ երկրին, և Էջմիածինի մէջ Սինհոդոս մի կազմեցին, և Սրապիոնը կաթողիկոս օծել տուին մեծախումբ հանդիսիւ 1603 օգոստոս 14'ին* (ԴԱՎ. 7), *Վերափոխման կիրակի օրը, և ոչ Հոգեգալստեան օրը* (11 ԱՄՍ. 5), *որ յունիս 12'ին կ'իյնար։ Այս առթիւ կոչեցին զանուն նորա Գրիգոր* (ԴԱՎ. 7), *և ըստ այսմ եղաւ նա Գրիգոր ԺԳ Սրապիոն, աթոռակից կաթողիկոս, զի գահակալութիւնը միշտ Դաւիթին կը մնար ցորչափ չէր հրաժարած։*

**1585.** *Դաւիթի և Մելքիսեդեկի խորհուրդը կատարուած էր, բայց ոչ ինչպէս իրենք մտադրած էին։*

**ՇԱՀԱԲԱՍ ԵՒ ՍՐԱՊԻՈՆ**

*Սրապիոն տիրացած էր Էջմիածինի, մինչ իրենք Տաթեւ քաշուած կը մնային, և սկսան վախնալ զի մի՛ է հնազանդութենէն զրկեսցէ։ Որպէսզի հասցէ հնազանդութիւնն ի յետս խորհրդոց* (ԴԱՎ. 8), *մտածեցին իրենք առաջին Շահաբասին դիմել, և անոր ձեռքով թէ դիրքերնին պահել, և թէ Օսմանցոց հանդէպ ունեցած պարտքերնէն ազատիլ։ Մելքիսեդեկ իրեն հետ առնելով Հաւուցթառի և Գեղարդի եպիսկոպոսները փութաց Սպահան իջնել, իսկ Դաւիթ Խորվիրապի եպիսկոպոսին հետ Հայաստան մնաց։ Շահաբաս պատուով ընդունեցաւ եկողները, խօսեցաւ և խօսեցուց, զամենայն խորհուրդս որպէս նորա յինքն կոչեցաւ, և զամենայն որդեգրութիւն աշխարհաց նորա՝ և զիւրեանց զաշխարհականս որոց էին այս* (ԴԱՎ. 10), *և անմիջապէս արշաւանքի ձեռնարկեց։ Մեծ յաղթութիւն մը տարաւ Օսմանցոց վրայ, որոնց հրամանատարն էր Ալի փաշա, Թաւրիզի կուսակալը, և պատերազմին սկսելէն 20 օր ետքը քաղաքը մտաւ, անկէ Նախիջեւան քալեց, ուր Օսմանցիք չհեռացած աւարառութեան ձեռնարկած էին, և դիւրաւ գրաւեց։ Ջուղայի Հայերը՝ իրենք Շահաբասը դիմաւորեցին և քաղաքը յանձնեցին և Շահաբասը խօջայ Խաչիկի տունը պատուասիրեցին* (ԴԱՎ. 16)։ *Վերջապէս 1603 նոյեմբեր 16'ին Շահաբասի բանակը երեւցաւ Երեւանի հանդէպ, ուր Օսմանեանք ամրացած էին իբրեւ իրենց ապաստանի դղեակը* (ԺՈՒ. 184)։ *Պարսից յաջողութիւնները Կոստանդնուպոլսոյ արքունիքը վրդովեցին, սուլտան Մէհէմմէտ Գ որ 1595 յունուար 16'ին հօրը Մուրատ Գ'ի յաջորդած էր, գոյժէն քիչ օր ետքը մեռաւ 1603 դեկտեմբեր 22'ին, և Ահմէտ Ա գահակալեց 14 տարեկան եղած ատեն։ Երեւան անձնատուր եղաւ վեց* (ԺՈՒ. 188), *կամ ութն* (ԴԱՎ. 23) *ամիս խիստ պաշարման դիմանալէ ետքը, որ է ըսել 1604'ին կէսէն ետքը։ Միեւնոյն միջոցին Կարսն ալ ինկաւ Պարսիկներու ձեռք, այլ Ախըլցխա դէմ դրաւ, երբ միւս կողմէն Օսմանեանք Էրզրումի մէջ նոր բանակ կը գումարէին* (ԺՈՒ. 189)։ *Էջմիածինի պահանջատէրերը Երեւանի պաշարումէն առաջ, սկսած էին Սրապիոնը նեղել Էջմիածինի հին պարտքերը գանձելու համար, զորս Սրապիոն չէր ուզեր ճանչնալ, բայց պարտաւորուեցաւ ոմանց յօժար և ոմանց ստիպեալ, և այնպէս դարձաւ ի յետոյ նորա* (ԴԱՎ. 14)։ *Իսկ Երեւանի առումէն ետքը Սրապիոն ալ իբր կաթողիկոս, ընծայեալ երեւեցաւ Շահաբասի առջեւ, բայց ոչ ընդունեցաւ, վասնզի կանուխէն Մելքիսեդեկին հետ համաձայնած էր զայն իբր կաթողիկոս ճանչնալ, քանի որ զայն իբր ըստ օրինի, այսինքն իբր իւր կցորդակից ընդունած էր։ Ասոր վրայ Սրապիոն խոհեմութիւն սեպեց հեռանալ, և յԵրեւան գնաց ի Ջուղայ, որպէսզի անկէ ալ Տիարպէքիր դառնայ ի տեղի իւր* (ԴԱՎ. 18)։

**1586.** *Դաւիթ և Մելքիսեդեկ Շահաբասի կողմն անցնելով և Պարսից տիրապետութեան օժանդակելով,*

**ՍՐԱՊԻՈՆԻ ՎԱԽՃԱՆԸ**

*կը կարծէին ոչ միայն իրենց կաթողիկոսութիւնը ապահովել, այլեւ Օսմանեանց հեռանալովը անոնց ունեցած պարտքերնէն ազատել, բայց այդպէս չեղաւ։ Հազիւ թէ Շահաբաս Երեւանի մէջ հաստատուեցաւ և Օսմանեանց գրաւած գաւառները ետ առաւ, անոնց պահանջներուն ալ տէր դարձաւ, և երկու կաթողիկոսները ստիպեց որպէսզի* [illegible]
*ցած տուրքերը* [illegible]
[illegible]

իբր կաթողիկոսակից և պարտքին ալ մասնակից (ԴԱՎ. 19)։ Գլխաւորապէս Մելքիսեդեկն էր, որ առաջ տրհամարեց զՍերաֆիոն՝ Շահաբասի դիմելով (ԴԱՎ. 151), և այս անգամ ալ ուզեց այս կերպով զօրաւոր մրցակիցէ մը ազատիլ։ Շահաբասի հրամանով թագաւորական հարկապահանջները, կաթողիկոսական պատուիրակին հետ խնկոյն ճանապայ ելան Սերաֆիոնի ետեւէն, Ջուղայի մէջ ըմբռնեցին զնա, և տարան ի կալանս, և պահանջէին ի նմանէ գանձս յոլով։ Թէեւ Սերաֆիոն մաս մը բան վճարեց, սակայն հարկապահանջները չգոհացան, և աւելին գանձելու համար տուին զՍերաֆիոն ի ձեռնս չարչարանաց, հարուածոց և տանջանաց, մինչեւ իսկ ի հրապարակի կախեալ յոտից բրածեծ առնէին զնա ամենքն առաջի յոլովից (ԴԱՎ. 19)։ Սերաֆիոն ստիպուեցաւ բազում գանձս փոխ առնուլ վճարել, որպէսզի հարկապահանջները գոհացնէ. և այսպէս ձեռքերնէն ազատելով, Ջուղայէ մեկնեցաւ ու եկաւ Վան, և Վանէ Տիարպէքիր (ԴԱՎ. 20), ուր նորէն իբր առաջնորդ ընդունուեցաւ, ինչպէս կը տեսնուի 1605'ին այնտեղ գրուած յիշատակարանի մը մէջ, ի առաջնորդութեան մերոյ Նահանգիս տէր Սերաֆիոն վարդապետին, որ և ընտրեալ Տեառն՝ Գրիգոր կաթողիկոսն սուրբ Էջմիածնայ (ԹՈՐ. Բ. 435)։ Սակայն թէ տարիքը առած էր, և թէ փորձանքներէ տկարացած էր, որով Տիարպէքիր գալնալէն տարի մը ետքը վախճանեցաւ 1606 ապրիլ 23'ին (ԴԱՎ. 20), Երեւման խաչին ուրբաթ օրը, և նոյն տեղ թաղուեցաւ հասարակաց գերեզմանատան մէջ, ուր տակաւին կը տեսնուի իւր համեստ չիրիմը պարզ տապանագիրով մը։ Սերաֆիոնի կաթողիկոսութիւնը երազի պէս անցած բան մը եղաւ, և ոչ ալ կանոնաւոր գործունէութիւն մը ունեցաւ։ Դաւիթէ և Մելքիսեդեկէ հրաժարուելով և չհամաձայնելով, Ջուղայեցիներու ստիպմամբ ձեռնադրուեցաւ 1603'ին վերջերը, գործի չի ձեռնարկած պատերազմի տագնապներուն ենթարկուեցաւ, իւր ունեւորութեան համբաւին երեսէն վտանգուեցաւ, և հանելէն տարի մը ետքը մազապուր ազատուելով իւր տեղը դարձաւ, և քիչ ետքը մեռաւ։ Իբրեւ անհատական ձիրքերով նշանաւոր անձ մը, պատուաւոր յիշատակ մը թողած է Սերաֆիոնի անունը, թէպէտ իբր կաթողիկոս ոչ մի նշանակութիւն ունեցած չէ։ Եւ ոչ ալ իբր հակաթոռ նկատուած է, թէպէտեւ վերջին պահուն Դաւիթ և Մելքիսեդեկ ետ կեցած ըլլան իրենց առաջարկէն, ուստի իբր օրինաւոր աթոռակից կը պահենք իւր անունը, Գրիգոր ԺԳ Սերաֆիոն կոչմամբ։

**ԲՌՆԻ ԳԱՂՈՒԹԸ**

**1587.** Սերաֆիոնի վրայ գործածուած խստութիւնը՝ Դաւիթն ու Մելքիսեդեկը բռնիպեց պահանջուած վճարումներուն գոհացում տալ, միւս կողմէն Շահաբաս ալ իրենց վրայ շատ չծանրացաւ, քանի որ իւր նոր աշխարհակալութեանց դիւրութիւններ ընծայած էին։ Բայց երկու կաթողիկոսներ չի կրցան հանգստութիւն վայելել, և միշտ անորոշ՝ վիճակ և թափառական կեանք ունէին։ Այդ միջոցին կրնանք պատշաճեցնել Աւետիս Ա կաթողիկոսի մը երեւումը, թերեւս առանց երկուքներուն կամքին եղած, այլ Սերաֆիոնի հեռանալէն ետքը, իբր անոր յաջորդ նշանակուած ժողովրդական նախաձեռնութեամբ, ինչպէս եղած էր Սերաֆիոնի ալ օծումը (§ 1584)։ Այդ միտքը յայտնապէս կը թելադրուի, Աւետիսի համար Դարանաղեցիին գրածէն, թէ եւ անկարգութեամբ և հակառակ կաթողիկոս (11 ԱՄՍ. 69), որ ուղղակի հակաթոռ մը ըսել կ'ըլլայ. սակայն քանի որ ժողովուրդէն պաշտպանուած էր, ամենայն վարդապետք և իմաստունք յեպիսկոպոսաց և ի քահանայից և ի ժողովրդոց զնա զօրաւոր առնէին, մանաւանդ որ միւս երկուքը սիրուած չէին, և անհամք էին որպէս զոյգ անդէպանք (11 ԱՄՍ. 69)։ Այդ հակաթոռութեան ձեւն է անշուշտ պատճառը, որ Դավրիժեցին երբեք Աւետիսի անունը չէ յիշած։ Նոյն միջոցին Շահաբաս լուր առաւ թէ Օսմանեանց սպարապետ Ջղալօղլի Սինան փաշա Կարնոյ մէջ ահագին բանակ մը կը պատրաստէ իրեն վրայ քալելու համար (§ 1583), և որովհետեւ ինքն անոր դիմադրելու պատրաստ ոյժ չունէր, պատերազմէ խոյս տալու եղանակը որոշեց, և միանգամայն թշնամիին ոյժը կոտրելու համար, ուզեց երկիրը անմարդացընել և անապատ դարձնել, որպէսզի յար-

ձակող բանակը պարէն ու դարման չգտնայ և չկարենայ յառաջել (ԴԱՎ. 26)։ Այդ խորհուրդները կ'ըլլային 1604 տարւոյ աշունքի սկիզբները, յետ տօնի սրբոյ խաչին (ԴԱՎ. 27), և վերահաս ձմեռն ալ աւելի զգալի պիտի ընէր Շահաբասի մտածած հնարքը։ Առաջին անգամ իւր միտքը յայտնեց Աքճաքալէ եղած ատեն, որ է հին Երուանդակերտը (ԴԱՎ. 26), իրեն մօտ հրաւիրելով տեղւոյն մեծամեծները, որոնց գլուխը կը գտնուէր Յովհաննէս քահանայ, Աղա Տէրտէր կոչուած։ Անոնք ձմեռը պատճառելով գործադրութիւնը գարունին թողուլ առաջարկեցին, բայց արդէն ձմեռուան պարագան Շահաբասի մտածմունքին հիմնակէտն էր։ Ամիրգունա խան, Երեւանի պարսիկ կուսակալը, գլուխ նշանակուեցաւ նոր ձեռնարկին, և Պարսկական Հայաստանի զանազան գաւառներու համար յատուկ զօրապետներ նշանակուեցան աշխարհաւերման խորհուրդը գործադրելու։ Հրաման տրուեցաւ քաղաքներու և գիւղերու բոլոր բնակիչները ճամբայ հանել դէպի Արարատի դաշտը, անկէ միահաղոյն Պարսկաստան անցընելու համար, դիմադրողները սովով և մահուամբ և գերութեամբ բռնադատել, զամենայն շէնս, զքաղաքս և զբնակութիւնս այրել, զհամբարս խոտոյ և յարդի, ցորենոյ և գարւոյ և զայլ դիզուածս կրակով ոչնչացնել։ Հաւաքուած բազմութիւնը խռնուեցաւ Արարատի դաշտը, և ահագին կարաւան մը կազմեց, լայնքէն Գառնիի լեռներէն մինչեւ Երասխի գետեզերքը, իսկ երկայնքէն աւուր միոյ ճանապարհ, բայց հինգ աւուր ալ ըստ եղեր է (ԴԱՎ. 28)։ Պարսիկ բանակը իւր առջեւէն բռնի կը քալեցնէր գաղթական բազմութիւնը, մինչ իւր ետեւէն կու գար Օսմանեան բանակը, այսպէս երեք բանակներ իրարու ետեւէ կը քալէին, աքսորական Հայեր, խոյս տուող Պարսիկներ, և հալածող Թուրքեր։ Նաւասարդի ամիսն էր, որ քաղցին վերջին, և Նաւասարդը սկսած էր 1604 հոկտեմբեր 21'ին, որով նոյեմբերի և դեկտեմբերի ձմեռնային ցուրտին ներքեւ կը կատարուէր անօրինակ գաղթականութիւնը։ Բնական էր որ անպակաս ըլլային ընդդիմութիւններ, որոնց հետեւանքը կ'ըլլային նոր տանջանքներ, զոմանս մահու հար-

տանջով տանելով, և զոմանց զանձս և զինչս հատանելով, և մինչեւ իսկ Վաղարշապատցի Յովհանջանի, Առաքել կաթողիկոսի եղբօր, և ուրիշ գլխաւորի մըն ալ զգլուխն կտրեցին, և ի ձող ցցեցին ի յահ և յերկիւղ ժողովրդեանն (ԴԱՎ. 29)։

**1588**. Տագնապը եւս քանզեւս մեծցաւ, երբոր կարգը Երասխը անցնելու եկաւ։ Հայեր ու Պարսիկներ հասած էին Ջուղայ, երբ Թուրքեր ալ Նախիջեւան հասան։ Պարսիկներ սկսան

**ԳԱՂԹԻՆ ՁԵՏԵՂՈՒԻԼԸ**

վախնալ թէ մի գուցէ Թուրքեր վրանին գան, զիրենք վտանգեն և գերիները ազատեն։ Ուստի և ոչ ժամ մի հանգստութիւն տուին, այլ ամէնքը ստիպեցին գետը անցնիլ։ Որչափ ալ զանազան կողմերէ նաւեր հաւաքեցին, և նոյնտեղ յոլով փոսս շինեցին, իմա՛ լաստեր և կուրեր, սակայն բազմութեան համար բաւական չէր, մինչ Պարսիկ բանակը բազմութիւնը շրջապատած էր որ փախչող չըլլայ, և բռնի գետը կը մղէր լողալով կամ փայտերու ապաւինելով կամ կենդանիներու պոչերուն փաթթուելով անցնելու համար։ Դաւրիժեցին ազիողորմ չեչտերով կը նկարագրէ աղետալի անցքը, զոր մենք պիտի չկրկնենք, բաւական ըլլայ ըսել թէ լողալու անփորձ տղաներու, կիներու և ծերերու դիակներով ծածկեալ էր երեսն ջրոյն, և թէ բազումք այնք էին որք հեղձմամբ ջրոյն մեռան, քան անոնք որք անցին (ԴԱՎ. 31)։ Վերջապէս յաջողեցան Թուրքերը չհասած բազմութիւնը անցընել, բանակն ալ անցաւ, Ամիրգունա խան հրաման ստացաւ Երեւան դառնալ, և գերութիւնը վարելու պաշտօնը անցաւ Էլիազ Խալիֆալու զօրապետին, ուղիղ Պարսկաստանի ներսերը տանելու համար զայն, ընդ Նեղ և Նուրբ և ընդ դժուարին ձորս, իսկ Շահաբաս և բանակը իջան Թաւրէզ ընդ արտաքին ճանապարհն։ Երբ աքսորականները Ահար և Մուշկուն գաւառները հասան, այլեւս ոչ կարէին գնալ, վասն սաստկութեանց և ձիւնաբքեանց ցրտոյ ձմերան, ուստի բռնադատեալ այն կողմերը ձմերեցուցին անդ ամիսս ինչ, մինչեւ որ գարունը բացուի (ԴԱՎ. 32)։ Հաւանական հաշուով 1606 տարւոյ յունուարին վերջերը կրնանք դնել այս դադարը։ Դաւիթ և Մել-

*քիստոնեայ կաթողիկոսներ ալ բազմութեան հետ էին, բայց Մելքիսեդեկ դադարէն օգտուելով ետ դարձաւ, և* [illegible] (ԴԱՎ.153), [illegible] (ԴԱՎ.156), *մինչ Դաւիթ բազմութեան հետ մնացած էր։ Մելքիսեդեկի ետ դառնալը բնաւ Մայրաթոռի համար հոգածութիւն ունենալէն չէր, զի Երեւանի մէջ բնակութիւն հաստատեց, և չուրջը հաւաքելով* [illegible] (ԴԱՎ.153)։ *Դարնան բացուելուն նորէն ճամբայ հանուեցաւ աքսորական բազմութիւնը, Արուխուրաք բէկի գլխաւորութեամբ, որ յաջորդած էր Ելիազի, մինչեւ որ հասան Ասպահան։ Քաղաքացի եղողները քաղաքին մէջ բնակեցան, իսկ շինականները և գեղականները զետեղուեցան Ասպահանի չուրջ եղող Լնջան, Ալնջան, Գանդիման, Ջղախոռ, Փարիա և Բուրվարի գիւղերը, 500 տուն ալ փոխադրուեցաւ Շիրազ գաւառը՝ Ալլահվերտի խանին խնդրանօք, այն կողմերն ալ շէնցնելու համար* (ԴԱՎ.33)։ *Հայաբնակ եղած տեղերու կարգին Քանաքեռցին կը յիշէ նաեւ Ահար, Ապահի, Համատան, Գուլփէքան, Քրման, Խոնսար, Խոյիկան և Շըխչաբան կոչուած տեղերը* (ՁԱՔ.19)։

**1589**. *Արարատի մեծ գաղութը, ընդարձակուած էր ոչ միայն նահանգին բոլոր գաւառներուն վրայ, այլ և անոնց հետ Բարձր-Հայոց և Տուրուբերանի և Վասպուրականի չրջակայ մասերուն վրայ* (ԴԱՎ.381), *որոնք վերջին օրեր Պարսիկներուն անցեր էին, և հիմայ կը ստիպուէին նորէն լքանել։*

ՋՈՒՂԱՅԻ ԳԱՂԹԸ

*Ընդհանուր տագնապին մէջ առանձինն յիշատակութեան արժանի է Ջուղա քաղաքի գաղութը, վասն զի թէ իւր մեծահարուստ և ազդեցիկ դիրքովը, և թէ սահմանագլուխի վրայ գտնուելովը կրնար մտածուիլ, որ ընդհանուր աւերումէն ազատ մնար։ Շահաբաս երբոր Երասխը անցնելէ ետքը դէպի Թաւրիզ կ'ուղղուէր, յատուկ հրաման արձակեց Ջուղան ալ պարպելու համար, և այս հրամանին գործադիր նշանակեց Համիս Թահմազղուլի բէկը, որ Վրաց թագաւորական ազգատոհմէն Պարսկաստան մնացած և իսլամացած իշխաններէն էր։ Երեք օր պայմանաժամ տրուեցաւ Ջուղայեցիներու կամովին ճամբայ ելլելու, ուսկից ետքը աւարառութիւն և սպանութիւն պիտի սկսէր քաղաքին մէջ, և այս նպատակով զինուորներ և աւազակներ քաղաքը պաշարած էին։ Անհնարին խուճապին խառնուեցան անձրեւ և ձիւն, փայլակ և կայծակ* (ԴԱՎ.45), *ախպէս որ աննկարագրելի եղաւ Ջուղայեցւոց տառապանքը, որոց ոգիքը կը քաղուէին հայրենիքէն բաժնուելնուն, և սիրտերը կը տանջուէին ամէն տեսակ զրկումներով։ Սրտաճմլիկ տեսարան մը բացուեցաւ կաթան Ս. Աստուածածին եկեղեցւոյն առջեւ, ուր օտարութենէ դառնալու շնորհքը մաղթելով եկեղեցիներու և տուներուն բանալիները գետին մէջ նետեցին* (ԴԱՎ.43)։ *Շահաբաս անողոք, կրկին և կրկին հրամաններ կու տար, քաղաքին մէջ պահուածները փնտռել, և բոլոր քաղաքը կրակի տալ։ Նոր տարւոյ գարունին նոր հետազօտութիւններ կատարուեցան Ջուղայի չուրջը, և մնացորդներ ճամբայ հանուեցան Ց*[illegible] (ԴԱՎ.46), *այսինքն է 1605 ապրիլ 8'ին, և այսպէս իսպառ քանդուեցաւ Ջուղայ, ճոխ և փառաւոր գիւղաքաղաքը։ Ջուղայեցիներէ մասնաւոր բաժիններ բնակեցան Թաւրէզ* (ԴԱՎ.45) *և Ղազբին, բայց բուն տեղերնին եղաւ Ասպահանի մօտ առանձին թաղ մը, որ Նոր-Ջուղայ կոչուեցաւ, և* [illegible] (ԴԱՎ.46)։

**1590**. *Այդ վերջին դիպուածները, զորս բառացի առաջ բերինք Դավրիժեցիէն, կարծես հակասութեան մէջ կը գտնուէին առաջ պատմուած բռնութիւններուն հետ, և իրօք ալ խառնակ զգացումներով տոգորեալ անձ մըն էր Շահաբաս։ Եթէ ուզենք այդ*

ընթացքին բացատրութիւն մը տալ, պէտք բանք թէ իւր երկիրը չենցնելու բուռն և յախուռն տենչն էր որ կը բորբոքէր իւր միտքը, և հեռաւորապէս ուրիշ տեղ եղած առաւելութիւններուն նախանձելով, կ'ուզէր զանոնք իր կողմը փոխադրել, և այս նպատակով անգութ բռնութիւններէ խակ չէր քաշուեր։

ՇԱՀԱԲԱՍ
ԵՒ ՀԱՅԵՐԸ

Հայը աշխարհաշէն, օգտակար և զարգացուն տարր մըն էր, և որպէսզի նա իրեն համար աշխատի, ամէն դիւրութիւն կ'ընծայէր իւր երկրին մէջ, և ամէն բռնութիւն ալ կը գործածէր որպէսզի ուրիշին օգտակար չըլլայ։ Անհաւատալի ըլլալու չափ թոյլատու և քաղցր եղաւ անոր վարմունքը Հայաստանէ բռնութեամբ քշուած Հայերուն հետ, անգամ մը որ անոնք Պարսկաստան հաստատուեցան, որպէսզի սիրեն նոր բնակութիւնին և աշխատին անոր օգտին։ Ամէն մտերմութիւն և բարեացակամութիւն կը ցուցնէր, կ'այցելէր անոնց շինութեանց, մտերմաբար կը տեսակցէր, և մանաւանդ Ջուղայեցւոց գլխաւորին խոճայ Սաֆարի տունը, գրեթէ իւր իջեւանն էր, ուր կ'ուտէր և կը խմէր անխտիր, և նոյն սէրը կը ցուցնէր Սաֆարի եղբօր Նազարի, և որդիներուն Մելիքի, Սուլթանամի և Սարֆրազի։ Հայերը տէգ արքունիք ալ հրաւիրելով կը պատուէր, և իւր նախարարներն ալ կը ստիպէր նոյնպէս ընել։ Հարկերը Հայերուն համար թեթեւցուցած էր։ Դատաստանները անոնց կողմ կը վճռէր, Պարսիկները զրկելով ալ։ Բռնիկները իրենց ստացութիւններէն հանելով Հայերուն կը սեփականէր. ամէն տեղ անխտիր եկեղեցիներ շինել կ'արտօնէր։ Հայոց մեծ տօներուն անոնց եկեղեցիներն ալ կ'երթար և անոնց արարողութեանց կը մասնակցէր։ Ամէն ծիսական պաշտամունք հրապարակաւ և ազատօրէն կատարել կու տար, ինչպէս Ջրօրհնէքը, կոչնակը, խաչալամը, թափօրը և հանդիսաւոր մեռելաթաղը (ԴԱՎ. 47)։ Շահաբասի ներքին նպատակը հետզհետէ արդիւնաւորեցաւ, զի բռնի աքսորմամբ գաղթած Հայերը, որ առաջ դառնալու մտածումով կ'օրօրուէին, սկսան այդ փափաքը կորսնցնել, և մէկ կողմէն իրենց առեւտրական և արհեստական օգուտը, միւս կողմէն երկրին հետ, և տեղաւորութեան նոր երկրին մէջ։ Շահաբասի այդ միտքը պարզօրէն կը բացատրուի այն խօսքերով զորս պատմիչը անոր բերանը կը դնէ, իբրեւ պատգամաւոր Պարսիկներուն պատասխան. Մի՛ վշտանայք և մի՛ զղջայցէք զնա, զի ես բազում ծախիւք, ջանիւք և հնարիւք հանի զձեզ ի կորուսէ, բերել զձեզ յայս աշխարհս, ոչ թէ վասն օգտի նոցա, այլ վասն օգտի ձեր, զի ազգս ձեր շինեսցի, և ազգն ձեր յաւելցի (ԴԱՎ. 48)։ Միայն թէ Շահաբասի միտքն ու գործը տեւական չեղան, և շատ բան փոխուեցաւ իւր նախնական դրութենէն։

1591. Իբրեւ մեծ գաղթականութեան գործին յարակից պարագաներ, աւելցնենք այս տեղ ինչինչ մասնաւոր դէպքեր, որք եզելութեան իսկական գոյնը կը ցոլացնեն։

ԳԱՂՈՒԹԻ
ԱՐԿԱԾՆԵՐ

Ամիրգունախան, որ Երասխի եզերքէն հրաման առաւ իւր կուսակալութեան դառնալ (§ 1588), պաշտօն ունէր միանգամայն փախած և պահուըտած Հայերը հաւաքելով Պարսկաստան յղել։ Գառնի գիւղի բնակիչներ, իրենց վրայ եկող զինուորները ծեծած ու վիրաւորելով ցրուած էին, ու իրենց տեղը անհոգ կը մնային։ Ամիրգունախ իրողութիւնը զինուորներէն իմանալով Տէր յոլոփ առնելով Գառնիի վրայ եկաւ, և ծեծով ու հարուածով ու խոշտանգանքով չարչարելէ ետքը՝ գիւղացիները քշեց մեծ կարաւանին ետեւէն, սակայն անոնցմէ մաս մը փախան, և քիչ մը պաշար ճարելով ապաւինեցան Գեղարդի ձորին քարանձաւները։ Անոնց հետ էին Մանուէլ Հաւուցթառի և Աստուածատուր Գեղարդի եպիսկոպոսները, որոնք Մելքիսեդեկի հետ Շահաբասին գացեր էին (§ 1585)։ Ամիրգունա բարեկամական խօսքերով հրաւիրեց փախստականները վար իջնել, իսկ անոնք անարգական խօսքերով և քարերու հարուածներով պատասխանեցին։ Ասոր վրայ զինուորները քարափնոց ճանապաներով և ժայռերէն սողոսկելով կրցան քարանձաւները բարձրանալ, և ներսը եղողներուն վրայ յարձակիլ։ Զինուորներէն մէկը Մանուէլի գլուխը կտրելով վար նետեց, Աստուածատուր կենդանւոյն վար

նետուելով Ամիրգունայի առջեւը սպան-ուեցաւ, և քարանձաւին մէջ եղողներէն մէկ մասը ջարդուեցաւ, մէկ մասն ալ մեծ կարաւանին հետեւէն քշուեցաւ։ Դավրիժեցին երկու եպիսկոպոսներուն սպանութիւնը որպէս [illegible] Աստուծոյ կը նկատէ (ԴԱՎ. 35), վասնզի Մելքիսեդեկի հետ Շահաբասը գրգռելու գացած ըլլալով, բոլոր աղէտներուն պատճառ եղած էին։ Ցիշատակելի է նաև Քօսատարի ձորին արկածը, ուր Եախրչիան կոչուած այրի մէջ հազարէ աւելի անձեր ապաւինած էին, մեծաւ մասամբ կին և տղայ, իսկ այրեր շրջակայ փոքր քարանձաւներու մէջ փակուած կը մնային։ Այրին անմերձենալի դիրքին պատճառաւ՝ Պարսիկ զինուորներ հեռուէ կողմէն լերան գագաթը բարձրացան, և անկէց վար չուաններով և գօտիներով կախուելով մինչեւ քարայրի բերանը իջան, անկէ ալ ուսերամերկ ներս խուժելով ահագին ջարդ կատարեցին, կիներու և աղջիկներու վրայ բռնութիւններ ալ գործադրեցին, որով շատեր [illegible] մահն նախադասելով՝ [illegible] ի վայր արկանէին զինքեանս և մեռանէին. շատերն ալ ցաւալի մահուան կը հանդիպէին, լերան ներքեւ գտնուող [illegible] ծովոց ճիւղերուն ցցուելով և տանջուելով (ԴԱՎ. 37)։ Այստեղէն ալ ապաւինողներէն մի մասը մեծ կարաւանին խառնուելով քշուեցաւ։ Այս երկու տեղնիտեղով պատմուած արկածներ բաւական են իբրեւ նմոյշ ծառայել այն անթիւ անհամար աղէտներու, որոց դուռ բացաւ Շահաբասի անգութ հնարքը։ Գաղթականին թողած երկիրը կատարեալ անապատի կերպարան էր առած, արգաւանդ հողեր խոպանացած, ամուր բերդեր քանդուած, վանքեր և եկեղեցիներ կործանած, կաթողիկէներ տապալած, երկիրը բնակիչներէ թափուր, արտեր առանց հողագործի լքուած, գազաններ և գիշատիչ թռչուններ շատցած, և իրաւամբ կը գրեն ժամանակակիցներ, [illegible] եղեւ [illegible], և [illegible] [illegible] և [illegible], զի [illegible] եղեւ [illegible] և [illegible] [illegible] էր (ԴԱՎ. 39)։

**1592.** Վերեւ յիշեցինք թէ Ջղալօղլի Սինան սպարապետը Պարսիկ բանակը կը հալածէր և կը հետապնդէր (§ 1587), սակայն երբ Երասխ կը հասնէր, թէ Պարսիկ բանակը և թէ աքսորական կարաւանը գետը անցեր էին, և դեռ կը մնային Ջուղայի աւեբակները։

**ՊԱՏԵՐԱԶՄ ԵՒ ՀԱՇՏՈՒԹԻՒՆ**

Օսմանցի սպարապետը չհամարձակեցաւ այլեւս յառաջել, աքսորական կարաւանը դժուարին ճանպաներով գացած էր, Պարսիկ բանակն ալ լաւ դիրքի և զօրացած վիճակի մէջ կը գտնուէր։ Ուստի հարկ սեպեց ձմեռուան խստութիւնը յարգել, և Վան ուղղուեցաւ ձմերելու, բայց միշտ խիթալով Շահաբասի Թաւրիզի մէջ համախմբած բանակէն։ Իրօք ալ Շահաբաս առաջին յարձակում մը փորձեց Վանի վրայ, զարկաւ Օսմանցոց բանակը, աւերեց և թալանեց շրջակաները (ԴԱՎ. 53), առանց Վանի տիրանալու (ԺՈՒ. 189)։ Սինան գարունին Կարին եկաւ, և նոր ոյժեր ալ հաւաքեց գանազան կողմերէ, բայց Շահաբաս ռազմագէտ հնարքով նախ մասնաւոր պատերազմներու մէջ թշնամին տկարացուց, և յետոյ վերջնական յաղթութիւնը տարաւ 1605 նոյեմբեր 25'ին, ի ծննդեան փրկչին (ԴԱՎ. 57), զի նաւասարդի 5'ն էր։ Ջղալօղլի սպարապետը պարտաւորուեցաւ նահանջել դէպի Տիարպէքիր, ուր մեռաւ սրտի ցաւէն, թերեւս անձնասպանութեամբ ալ, 1606 փետրուար 6'ին (ԴԱՎ. 57), ուրիշներ կը գրեն 1605 դեկտեմբեր 2'ին (ԺՈՒ. 190)։ Այդ յաղթութիւնը հաստատեց Շահաբասի տիրապետութիւնը Հայաստանի այն մասերուն վրայ, որոնք 1590'ի դաշնադրութեամբ Օսմանեանց թողուած էին (§ 1570), և Երեւան ու Էջմիածին, շատ քիչ ժամանակ Օսմանեանց տիրապետութեան ներքեւ մնալէ ետքը, նորէն Պարսից ձեռքը անցան։ Աւելորդ կը սեպենք երկու կառավարութեանց քաղաքականութեանը մտնել, տեսանք արդէն Օսմանեանց ներքեւ տեղի ունեցած տագնապը, պիտի տեսանք Պարսից իշխանութեան բռնութիւնները։ Նոյն իսկ Շահաբասի բարեացակամութիւնը Հայերուն հանդէպ (§ 1590), սահմանափակուած էր Պարսկաստան գաղթողներուն վրայ, մինչ անոր ձեռքը սաստկապէս կը ծանրանար Հայաստան մնացողներուն վրայ, ինչպէս վերեւ բացատրեցինք (§ 1590)։

**1593.** Պատերազմական տագնապներ և բռնի գաղութի աղէտներ չէին միայն, որ Արեւելքը, և աւելի սաստկութեամբ Հայ տարրը կը ճնշէին։ Ջալալի կամ Ճէլալի կոչուած յելուզակներուն փորձանքը, եթէ մեծագոյն չէր, համահաւասար արկած մըն էր։ Ասոնք իրարու հետ միացած կամ դաշնակից մարմին մը չէին, այլ իւրաքանչիւր գաւառի մէջ հաստատուած բռնապետ իշխաններ, զորս աւելի յարմար էր աւազակապետներ կոչել, ամէն ապստամբութիւն և աւարառութիւն և սպանութիւն համարձակ կը գործէին, յաճախ իրարու դէմ ալ ելլելով։ Ճէլալի ընդհանուր կոչումը գուցէ յառաջ եկած է Ճէլալի քրդական ցեղին անունէն, որ նախայարձակը եղած էր այդ գործին, իր ցեղապետ Թօփալ Օսմանի գլխաւորութեամբ։ Այդ համարձակ յելուզակութիւնը կը տիրէր բոլոր Օսմանեան կայսրութեան Ասիական գաւառներու մէջ, Պրուսայէն մինչեւ Պաղտատ, Տրապիզոնէն մինչեւ Դամասկոս, բայց աւելի սաստիկ էր Հայաստանի և Կիլիկիոյ կողմերը։ Գրգռութեան պատճառն ալ երկրին անիշխանութիւնը և պետական ազդեցութեան բացակայութիւնն էր, իւրաքանչիւր ցեղապետ կամ կուսակալ իբր ինքնիշխան տէր ուզածը կը գործէր աւազակներու խումբ մը գլուխը ժողված, որ թուով հազարի կը մօտենար և քիչ անգամ հազարը կ'անցնէր։ Որեւէ լեռ մը կամ կիրճ մը յելուզակներուն անբռնաբարելի ապաւէնն էր, անոնք տիրապետութեան չէին հետամտեր, այլ կը գոհանային աւազակօրէն աւերելով և աւարելով, գերելով և գերփելով։ Մեր նպատակէն դուրս է անոնց պետերը համրել, որոնցմէ 30'ի չափ յանուանէ կը յիշէ Դավրիժեցին (ԴԱՎ. 64), կամ ատոնց կատարած չարագործութիւններուն պատմել, որոնք զանազան պատմիչներէ և յիշատակագիրներէ յառաջ բերուած են՝ իրենց քստմնեցուցիչ և մորմոքիչ մանրամասնութիւններով։ Ոչ միայն գտածնին և տեսածնին կը գրաւէին, այլեւ ծածուկ պահարաններու մէջ եղածները իմանալու և առնելու համար, անլուր տանջանքներով և խոշտանգանքներով կը չարչարէին, գլխաւորապէս վանքերու միաբանները և եկեղեցիներու քահանաները, և յատուկ կերպով կը հետեւէին մանկամարդ կիներու, նորահաս աղջիկներու և գեղերես մանչերու առեւանգութեան։ Այդ անտանելի կացութեան հետեւանքն էր, որ արդէն գաղութով և կոտորածով անմարդացեալ երկիրը, փախուստի և խուճապի մատնուածներու երեսէն գրեթէ բոլորովին կը դատարկանար, հողագործութիւն, անասնաբուծութիւն, արհեստ և առեւտուր խափան կը դադարէին։ Հայերուն իրենց բնագաւառէն հեռանալը, որ զանազան պատճառներով արդէն ընդարձակութիւն գտած էր, անգամ մը եւս կ'աճէր և կը տարածուէր, և ով որ կրնար, կեանքը ազատել կ'աշխատէր ու պանդխտութեան ճամբան կը բռնէր։ Պարսկաստան, Ասորիք, Կովկաս, Լեհաստան, Հունգարիա, և Կոստանդնուպոլսոյ շրջակայքը նոր հայաբնակութեամբ կը լեցուէին։ Ճէլալիներու յելուզակութեանց սկզբնաւորութիւնը ոմանք 1598'էն կը դնեն (ՉԱՄ. Գ. 536), ուրիշներ 1599'ին Հիւսէյին փաշայի ապստամբութենէն կը սկսին (ԴԱՎ. 64), բայց իրէպ է աւելի առաջ ալ դնել անոնց սկիզբը, և յիշեալ տարիներէն հաշուել աւելի սաստկանալը, որ տասը տարի եւս անընդհատ շարունակեց։

**1594.** Այդ անտանելի աղէտներուն եւ տեւէն հասաւ անմիջապէս ինչ որ անհրաժեշտ հետեւանքն էր, այսինքն ընդհանուր սովը։ Գրեթէ անսուաղ մնացին կայսրութեան բոլոր Ասիական գաւառները ի Մեծ Երկրոյ մինչ ի Ծովն, Սեւ ծովէ և Միջերկրականէ շրջապատուած մասերը, և աւելի սաստկութեամբ Հայկական գաւառները, ուր պատերազմներ, բռնի գաղութը և Ճելալիք ձեռք ձեռքի տուած ամէն բան սպականած և ամէն կողմ անապատացուցած էին։ Սովին սկզբնաւորութիւնը կը դրուի 1606'ին, երբ տակաւին Բոյլ էր Լուլ էր Խէօդ, 1607'ին սաստկացաւ, 1608'ին շարունակեց, 1609'ին թուլացաւ, և հազիւ 1610 թուականին բարձաւ բնաւին ողորմութեամբն Աստուծոյ։ Իսկ սաստկութեան աստիճանը ցուցնելու հա-

մար բաւական ըլլայ յիշել որ ոչ միայն գլուխ և գլոտու և ղոյլ անտուրթ կենդանի, այլ և զմորթոյ մի կերան մորթէ (ԴԱՎ. 68)։ Բազմաթիւ մասնաւոր դիպուածներ կը պատմուին, թէ ինչպէս մեռածները ու բռաչէին, այլ ուտէին, կամ թէ չկենդանի մորթը ըմբռնէին և ուտէին։ Օչականցի մը մարդ խաբելու, մորթելու և ծախելու առեւտուր էր ըրած։ Բջնեցի երեք կիներ մարդու կտորուանքներ եփելու վրայ բռնուեցան։ Կարնեցի չորս կիներ մարդ մորթելու վրայ յայտնուեցան, և կուսակալի հրամանով սպանուեցան։ Սեբաստացի կիներ իրենց զաւակն իսկ կտրած ու կերած էին (ԴԱՎ. 65)։ Բաւական կը սեպենք ակնարկել այդ պժգալի եղելութիւնները, որպէսզի գոնէ ընդաղօտ գաղափար մը տուած ըլլանք ժամանակին տիրող անտանելի կացութեան վրայ։ Աւելորդ չըլլայ դիտել տալ, թէ սովին սաստկութեան տարիները, յելուզակներուն ալ աւելի կատաղութեան տարիներն էին։ Եւ որ չար եւս է, մէկ կողմէն վատ օրինակը, միւս կողմէն վերահաս սովը, քրիստոնեաներէն ալ քանիները կը կատղեցնէին, որ էբրեւ փեռանէին թե այլազգէին որդեօ առնէին, ինքեանք եւս օհան այսպէս առնել (ԴԱՎ. 63)։

**1595.** Այսչափ աղէտներ և երկրի աւերածներ հազիւ թէ սթափեցուցին Օսմանեան կեդրոնը, որպէսզի գործնական և վերջնական միջոցներ ձեռք առնուին երկիրը խաղաղեցնելու, և Ճէլալիները ընկճելու, և սովին դարման մը հոգալու։

**ՃԷԼԱԼԻՆԵՐՈՒ ՋՍՊՈՒԻԼԸ**

Ծանր բայց կենսական գործը յանձնուեցաւ Գույուճու Մուրատ փաշայի, որ իբր սպարապետ Գերմանացւոց դէմ պատերազմին, 1606 նոյեմբեր 11'ին, պատուաւոր և նպաստաւոր հաշտութեան մը ստիպած էր Ռոտոլփոս Բ կայսրը, և 1607 յունուարին մեծ եպարքոսութեան բարձրացած էր։ Մուրատ անմիջապէս պատրաստութիւնները լրացնելով Կոստանդնուպոլսոյ մօտերէն սկսաւ յելուզակներուն դէմ յարձակումները, և բուռն զօրութեամբ և անողոք խստութեամբ յաջողեցաւ ամէնքն ալ զսպել, բոլոր գլխաւորները սպաննել ու ջնջել, և հետեւորդները հպատակեցնել, և 1608 դեկտեմբեր 18'ին, տարիուկէս անդուլ անխոնջ աշխատանքէ ետքը, յաղթական փառքով մայրաքաղաք մտաւ, իբրեւ յաղթութեան նշանակ առջեւէն տանելով Ճէլալիներէն գրաւուած 400 դրօշներ, իւրաքանչիւրը իւր խմբապետի անունովը մակագրուած (ԺՈՒ.193)։ Պէտք է դիտել թէ 1609 տարեթիւը սովին ալ թուլնալուն թուականն է (§ 1594), երբոր երկրին բնակիչներուն հնար եղաւ իրենց գիւղերուն մէջ հաստատուիլ, և քիչ ու չատ հողագործական աշխատութեանց ձեռնարկել, արհեստաւորներ համարձակութիւն ստացան իրենց գործերով զբաղիլ, և առեւտրականներ կրցան ապրանքներու փոխադրութեան հետեւելով ժողովուրդին պէտքերը հոգալ։ Կարծես թէ նոր կեանք մը սկսաւ երկրին մէջ, ահագին տագնապէ մը ետքը։

**1596.** Պատերազմներու և յելուզակներու և սովի անտանելի արկածներուն ժամանակը, պէտք էր որ Օսմանեան հայարնակութեան կեդրոնը՝ հոգածութեան և խնամողութեան չարժէր, և Կոստանդնուպոլսոյ պատրիարքները և մեծամեծները յորդորէր իրենց ազգայիններուն հսկելու և օգնելու։

**ՄՐՑԱԿԻՑ ԳՈՐԾԻՉՆԵՐ**

Դժբախտաբար տարբեր ընթացքի մը հաւաստիքը կ'ընծայեն մեզի մայրաքաղաքի Հայերը, անձնական վէճերով և խարդախ միջոցներով իշխանութիւնն ու ազդեցութիւնը իրարու ձեռքէ խլելու զբաղած։ Եկեղեցական դասակարգէն չորս անուններ են, որ հրապարակի վրայ կ'երեւին այս միջոցին, իւրաքանչիւրը իւր աշխարհական կողմնակիցներն ունենալով, որոնց մէջ նշանաւոր անուններ չեն յիշուիր։ Յովհաննէս Կոստանդնուպոլսեցի, մականուանեալ Խուլ, անշուշտ ականջին ծանրութեան համար, ծնած Կ-Պոլիս 1554'ին, աշակերտութիւնը և եկեղեցական աստիճանները մայրաքաղաքին մէջ ստացած, և հաւանաբար նոյն տեղ ալ եպիսկոպոս ձեռնադրուած Մելքիսեդեկի այն տեղ եղած ատեն 1599'ին (11 ԱՄՍ.2)։ Գրիգոր Կեսարացի, ծնած Կեսարիա (ԹՈՐ.Ա. 294), թուականը անորոշ, աշակերտած Սրապիոն Ուռհայեցի կաթողիկոսին (§ 1584), 1595'ին

*անկէ վարդապետական գաւազան առած* (ԿՈԼ.78), *Կեսարիոյ առաջնորդ եղած և Երուսաղէմի գործերուն մասնակցած է* (11 ԱՄՍ. 3)։ *Գրիգոր Դարանաղեցի, մականուանեալ Բուք* (ՏԱՇ. 410), *ծնած Կամախ 1576'ին, Աքեղայ ձեռնադրուած 1590'ին, միջոց մը Էջմիածինի մօտերը Սաղմոսավանք մնացած, ետքէն Բաբերդ եկած* (ՍԱՄ. 203), *վարդապետական գաւազան առած Սրապիոն Օձտեղացի վարդապետէն՝ Վահանաչէնի առաջնորդէն, 1603 մայիս 28'ին, որ յունիս 12 պէտք է ուղղուի, եթէ Հոգեգալստեան տօնն էր տուուչութեան օրը* (11 ԱՄՍ. 51)։ *Դարանաղեցին Բաբերդէն չէ կրցած Երեւան դառնալ, Շահաբասի հրամայած բռնի գաղութին պատճառաւ* (§1587), *և խոյս տալով Կ-Պոլիս եկած է 1604'ին* (ՏԱՇ. 410)։ *Զաքարիա Վանեցի Գիշու որդի* (ԹՈՐ. Բ. 288), *կամ Գէչոյեանց ընտանիքէն, ծնած Վան չուրջ 1570'ին, աշակերտած Վարագի մէջ Բարսեղ Աւանցցի վարդապետին, և վարդապետական գաւազան ստանալէ ետքը Կ-Պոլիս եկած, ուր 1603'ին կը գտնուէր ուսուցութեան զբաղած Յակոբ Ուլնեցի և Մաղաքիա Եւդոկիացի վարդապետներուն հետ* (11 ԱՄՍ. 65)։ *Վանայ առաջնորդ էր եղած 1606'ին, և 1608'ին մերժուելով* (ԹՈՐ Բ. 288), *կ'երեւի թէ այս անգամ Էջմիածին է անցած, ուսկից Մելքիսեդեկի կողմէ նուիրակ կը ղրկուի, Ֆրանկօփանէն ԺԷ ... առճօսաբօլ, և այս առթիւ Հռոմ ալ կ'երթայ* (11 ԱՄՍ. 72)։ *Յիշեցինք արդէն* (§ 1581), *թէ Մելքիսեդեկ Գառնեցի աթոռակից կաթողիկոս՝ Կ-Պոլիս եկած էր 50000 ղուրուշի պարտքին դիմաց նպաստ հաւաքելու, երբ 1599'ին պատրիարքութիւնը ձեռք ձգեց Տիրատուր Սսեցին գահընկէց ընել տալով, բայց տարին չանցած նոյնը իրեն ալ պատահեցաւ* (§ 1581)։

**ԿԵՍԱՐԱՑԻՆ ՈՒ ԽՈՒԼԸ**

**1597**. *Յովհաննէս Խուլն եղաւ, որ յաջողեցաւ Մելքիսեդեկը տապալել, և ինքն անոր տեղ պատրիարքութիւնը գրաւեց 1600'ին։ Յովհաննէսի զօրանալուն ոյժը հարկաւ տեղացի ըլլալով բարեկամներ ունենալն էր, բայց տեւական չեղաւ իւր վիճակն ալ։ Գրիգոր Կեսարացի հազիւ թէ Կ-Պոլիս երեւցաւ Երուսաղէմի նուիրակութեան պաշտօնով, ամէնքը չահեցաւ իւր փառաւոր կերպարանքով, ճգնողական կեանքով և գիտնական արժանիքով, ինչ որ բաւեց Խուլը տապալելու և պատրիարք հռչակուելու 1601'ին։ Ոմանք կը կարծեն թէ Կեսարացին պատրիարքութենէ ետքը 1602'ին եպիսկոպոս ձեռնադրուած ըլլայ Սսոյ մէջ Յովհաննէս Այնթապցիէն* (§ 1578), *չկարենալով Էջմիածին երթալ Ճէլալիներու երկիւղէն* (11 ԱՄՍ. 4), *սակայն ուրիշ յիշատակներ 1598'ին կը դնեն անոր ձեռնադրութիւնը, նոյն Յովհաննէս Այնթապցիէ, իսկ պատրիարքութենէ ետքը միայն Կեսարիա գացած կ'ըսեն վիճակին գործերուն համար, և նորէն այցելած Այնթապցիին Վահկայ բերդին մէջ* (90 ԱՐԵ. 475)։ *Կեսարացիին համակիր չեղողներն իսկ կը գրեն թէ պատրիարքութեան մէջ ժամանակ մը օղղօմբիաննէր ֆործեց* (11 ԱՄՍ. 4), *բայց թէ ինչ ըրաւ չենք գիտեր, և ոչ ալ գաղթականութենէ և Ճէլալիներէ յառաջ եկած արկածներուն մասին բան մը ըրած ըլլալը կը գտնենք։ Առ առաւելն օգնած է նեղքին գաւառներէ փախստականները Կ-Պոլսոյ մօտերը տեղաւորելու։ Այդ կարգին նշանաւոր է Ռոստոմթոյի գաղթականութիւնը, Կամախ գաւառէն եկած, որուն պաշտպան ու պատմիչ եղած է իրենց հայրենակիցը Գրիգոր Դարանաղեցին։ Կեսարացին 9 տարի պատրիարքութեան աթոռին վրայ մնաց, մինչեւ որ Յովհաննէս Խուլ նորէն զօրացաւ։ Անկէ առաջ 1607'ին անգամ մըն ալ բացակայած է Կեսարացին, և Յակոբ Նաղաշ քահանայն պատուիրակ ղրկուած է, զինքն Կեսարիայէ բերելու, և նա դարձած է ի Բէօղոնդիօ — հէղօֆօղ և խրօխօ կէրղէօ օրղէօ ղօօէօծ* (11 ԱՄՍ. 3)։ *Բայց մրցումները չեն դադարած, մինչեւ որ 1609'ին Խուլը կը յաջողի նորէն աթոռին տիրանալ։ Կեսարացիին պարբերական բացակայութիւնները, որոնցմէ 1602'ին և 1607'ին հանդիպածները յիշեցինք, հետեւանք էին Կեսարիոյ առաջնորդութիւնը վրան պահելուն* (01 ՕՐԱ. 88)։ *Յովհաննէս Խուլին այս երկրորդ անգամ պատրիարքութեան անցնելու առեւնին և անոր նախաձեռնութեան կը վերագրուի Կոստանդնու-*

պոլսոյ Գումքաբու թաղին մէջ, 1610'ին, առաջին անգամ Ս. Աստուածածնի անունով մատուռի մը կամ փոքրիկ եկեղեցիի մը շինութիւնը, Յոյներու գերեզման եղած գետնի մը վրայ, և 40 օրուան մէջ գործը վերջացնելու պայմանով (11 ԱՄՍ. 79)։ Այժմեան պատրիարքանիստ մայր եկեղեցւոյն սկզբնաւորութեան թուականն է, որ աթոռանիստ տեղւոյն տեղափոխութեան ալ պատճառ եղած է, մինչ անկէ առաջ Սամաթիոյ Ս. Գէորգը եղած է աթոռանիստը, և Սուլու Մանաստըր կոչումը, որ ցարդ կը պահուի, ոչ միայն ջրամբարներու գոյութեան, այլեւ վարդապետներու բնակակցութեան յիշատակը կը պահէ։

**1598.** Երբոր Կ-Պոլսոյ մէջ վերոյիշուած եղելէջները տեղի կ'ունենային, Էջմիածնի անցուդարձն ալ լաւագոյն վիճակ չունէր։ Յայտնի է թէ բուն գահակալն էր Դաւիթ, որ

**ԷՋՄԻԱԾԻՆ ԵՒ ՄԵԼՔԻՍԵԴԵԿ**

յառաջագոյն և նախ էր լեալ կաթողիկոս քան զՄելքիսեդեկն, և առաւուրբք և ալեօք եւս մեծ էր, նախ Դաւիթն էր օրհնեալ զՄելքիսեդեկն (ԴԱՎ. 155), բայց նա գաղթականութեան հետ Ասպահան էր գացած, և հոն կը շարունակէր մնալ։ Թէպէտ Շահաբաս զԴաւիթն աւելի ընդունէր քան զՄելքիսեդեկ, այս վերջինս ալ ունէր իր կամաց Մուշկունէ եւ դանանալէն ցուած (§ 1588), սակայն Մելքիսեդ յաջողած էր Էջմիածնի տիրանալ Ամիրգունայի և միւս պաշտօնակալաց պաշտպանութեամբ, քանի որ առաւել յետնեալ և բազ-ճոխաւոր էր դրամօք և այլ իրօք (ԴԱՎ. 161)։ Մելքիսեդ համարձակութիւն գտնելով Ամիրգունայի հովանաւորութենէն, զօրացեալ և ստուարացեալ և յօրացեալ յիշխանութեան մէջ, ոչ կամէր լսել Դաւթի, զի զոր ինչ ասէր Դաւիթ, զթանէս նորա Մելքիսեդեկն սպանգանէր, և ոչ միայն այսչափ, այլեւ իրաւունքէ և հասոյթներէ ալ կը զրկէր, մինչեւ որ Դաւիթ կը գանգատէր, որ եթէ ի բաց կացուցեր զնա յիշխանութենէ կաթողիկոսութեան, տանէր տայր ինձ օր առաւր դրամս զիւրոյց զորէնս կերակրոց և զգեստուց (ԴԱՎ. 155)։ Դարանաղեցի Գրիգորի և Քանաքեռցի Զաքարիայի վկայութեամբ Աւետիս կաթողիկոս մըն ալ (§ 1582) կը գտնենք այս միջոցին Էջմիածնի մէջ, սակայն չենք գիտեր թէ ինչ դեր կը վարէր, և ինչ գործունէութիւն ունէր, քանի որ Դավրիժեցին ամէն մանր պարագաները և ամէն ներկաները յիշելով մէկտեղ, այս միւս աթոռակիցին անունն իսկ չտար իր ընդարձակ պատմութեան մէջ։ Իրէպ կը կարծենք ըսել, թէ Աւետիս, որ դորկէչ և օրբառէր, խռովիչ և ստամբակող բնաւորութեան տէր անձ մը կը նկարագրուի (11 ԱՄՍ. 69), համակերպող ընթացք մը կը պահէր Մելքիսեդեկի հանդէպ, ոչ անոր անկարգութեանց մասնակցելով, և ոչ ալ ընդդիմանալ համարձակելով, կամ իր իշխանութեամբ ճոխանալով։ Մելքիսեդեկի անկարգ ընթացքը, և աթոռէ հեռու Երեւանի մէջ բնակելով Էջմիածնի արդիւնքը իր լոյծ և ընդարձակ կեանքին գործածելը, քանիցս միաբաններու կողմէն իրեն երեսը խօսուեցաւ, սակայն Մելքիսեդ զօրացեալ և ստուարացեալ բովանդակ իշխանութեամբ, սպանգանէր և անկոշէր զամենայն առաջեալսն նոցին (ԴԱՎ. 153)։ Ասոր վրայ Կարապետ և Մարտիրոս և Յովհան եպիսկոպոսներ, երեքն ալ ի նոյն գեղջէն Էջմիածնի, ստիպուեցան Ամիրգունա խանին ամբաստանութիւն ներկայել, անոր անհաւատարիմ մատակարարութեան դէմ, և խանը առիթ գտաւ 60 թուման գանձել Մելքիսեդեկէ իբրեւ տուգանք, իսկ սա ուրացեալ լեալ Էջմիածնէ հեռացաւ, և Վրաստան քաշուեցաւ, ինչ որ հաճելի չեղաւ պետական իշխաններուն, քանի որ նուէրներու աղբիւրը կը ցամքէր։ Ուստի ձեռնտուք եղեն Ամիրգունայի, որ այս անգամ ալ առիթ գտաւ եպիսկոպոսներէն տուգանք գանձել, Մելքիսեդեկը բերել, և զանոնք հեռացնել, որոնցմէ Կարապետ Սեւան քաշուեցաւ, Մարտիրոս Ասպահան գընաց Դաւիթի մօտ, իսկ Յովհանի տեղը յիշուած չէ (ԴԱՎ. 154)։ Այդ եղելութեանց մէջ ալ Դավրիժեցին Աւետիսի անունը չի տար, և չենք կրնար ճշդել թէ ինչ դիրք կը պահէր նա Մելքիսեդեկի և միաբանութեան պայքարին մէջ։

**1599.** Պատահական միջադէպ մը մեծ նշանակութիւն ստացած է այդ միջոցին։ Հայաստանի բունի գաղութին վրայ Ֆրանկ գործքէ, այսինքն լատին կրօնաւորներ սկսած էին ցրուիլ զանազան գաւառներ, թէ մարդ

*որսալու և թէ անտէր ստացուածներ գրաւելու, և գլխաւորապէս լքեալ տաճարներէն մնացած սրբութիւններ հաւաքելու։*

**ՀՌԻՓՍԻՄԷԻ ՆՇԽԱՐՔԸ**

*Անոնցմէ ոմանք Կարենիս գիւղի Ս. Առաքելոց վանքին մէջ Անդրէաս առաքեալի գլուխը կը գտնեն, բայց Երեւանի եպիսկոպոսը վրայ կը հասնի և ձեռուըներնէն կ'առնէ։ Ուրիշներ Ս. Հռիփսիմէի տաճարը կը պրպտեն, որ աւեր ձեւ մը առած էր, և* բովանդակ եկեղեցին և խորանն աղբով անարգացեալ էին *(ԴԱՎ. 135)։* Պատրէ Երէ *(ԴԱՎ. 137), որոց երկուքին անունները Գլէլում (ԴԱՎ. 149) կամ Գըլան և Արքանչէլ են յիշուած (ԴԱՎ. 141), իմա՛ Գուլիէլմոս և Հրեշտակապետ, իրենց գործ կ'ընեն Ս. Հռիփսիմէի ոսկրները ձեռք ձգել, և գաղտնի պեղումներով նպատակին կը հասնին, բայց ոսկրները եկեղեցւոյն մէջտեղը հանած ատենին, վրայ կը հասնին Գրիգոր և Վարդան եպիսկոպոսներ, որք ելած էին* ի զբօսանս յՋուղայէ*։ Կրօնաւորներուն և եպիսկոպոսներուն մէջ* կոծ և կոծ և ողբումն *կը սկսին, մինչեւ իսկ* զմիմեանս հարկանէին և վիրաւորէին*, բայց եպիսկոպոսներ կը յաջողին նշխարները Էջմիածին փոխադրել, ուր կը խմբուին բոլոր միաբաններ, և կը հասնի նաեւ Մելքիսեդեկ (ԴԱՎ. 137), որուն արդէն* ոսկի պահեկանս *տուած էին կրօնաւորները,* զի մի լիցի հետաքրքիր գործոց նոցա *(ԴԱՎ. 131)։ Այստեղ ալ Մելքիսեդեկ աչք կը գոցէ որ մէկ մաս մը վերցնեն կրօնաւորները* ի մժղամբ *չինուած քսակներու մէջ։ Միաբաններ մնացածը նորէն իր առաջին տեղը կ'ամփոփեն,* ուր խճով և կրով ծածուցեալ ամրացուցին*։ Հռիփսիմէի նշխարները հանող կրօնաւորներ, Երեւանի և Նախիջեւանի ճամբով կ'երթան Երնջակի Ապարաներ գիւղը, Ունիթորներու կեդրոնը, անկէց ալ լռելեայն կ'իջնեն Սպահան, որպէսզի նշխարներէ մաս մըն ալ տանին* ի քաղաքն Գօայ *(Goa), որ է Հնդկաստանի մէջ,* յերկիրն Փորթուգալեցին*, և վերջապէս* բռան եւոկ ի Ֆռանկստան *(ԴԱՎ. 139)։*

**1600**. *Սպահանի մէջ դեռ չէր լռուած կրօնաւորներուն և նշխարներուն գալը, երբ Դաւիթ կաթողիկոսի ապստամբներէն մէկը, անունը Գրիգոր, փառնկայ լեզուին ծանօթ և անոնց վանքերը յաճախող, հանդիպմամբ կը լսէ գործը նոյնիսկ կրօնաւորներուն բերնէն, և լուր կու տայ Դաւիթի, այն ալ խօճայ Սաֆարին, որ*

**ՆՇԽԱՐԱՑ ՅԱՅՏՆՈՒԻԼԸ**

*Նոր-Ջուղայի աւագն էր (§ 1590), և Աղատէրտէրին (§ 1586), որ աւագերէցն էր։ Ասոնք ալ լուր կու տան Միրզա Մահմատ կուսակալին, և Լատինաց վանքը յանկարծ կոխելով, ոսկրներու սնտուկը կը գտնեն, և կնքելով Սաֆարի մօտ աւանդ կը դնեն, մինչեւ որ Շահաբասէ հրաման մը գայ։ Սաֆարի եղբայր Նազար ալ, որ Թաւրիզ Շահաբասի մօտ կը մնար, պէտք եղած միջնորդութիւնը կ'ընէ, և Ալթուն անունով յատուկ պաշտօնեայ մը կը ղրկուի Ապարաներ, նշխարները գողցող կրօնաւորները Շահաբասի մօտ բերելու։ Ալթուն ամէն խստութիւն ձեռք կ'առնէ, կապանք, չարչարանք և բրածեծ, որպէսզի բուն գողցողները ցոյց տան, և հոն պահուած նշխարներն ալ մէջտեղ հանեն։ Ալթուն, որ հայազգի Աւետիք մըն էր, պատահմամբ կը լսէ պզտիկ տղայի մը, իր հօրեղբօր քահանային ծեծուած ատեն բերնէն հանած հայերէն մէկ խօսքը, և անով հետազօտութիւնները կը դիւրացնէ, ամէն բան մէջտեղ կը հանէ, մինչեւ իսկ մերձակայ Բոլու լերան մէկ քարանձաւին մէջ թաղուած մասը, և թէ նշխարները և թէ կրօնաւորները առնելով ճամբայ կ'ելլայ Թաւրիզ տանիլ։ Աստապատ հանդիպած ատեն, որ իր ծննդավայրն էր, Աւետիք-Ալթուն կրօնաւորներուն գլուխները միայն Շահաբասի տանիլ կը մտածէ, այլ Պօղոս Մոկացի վարդապետի խրատով ետ կը կենայ։ Իսկ Շահաբաս կրօնաւորները կ'արձակէ, և նշխարները բոլոր Սաֆարի կը ղրկէ, որ պահուին Սպահանի մէջ (ԴԱՎ. 145)։ Իբրեւ այս պատմութեան լրումն կ'աւելցուի, թէ երկու բուն գող կրօնաւորները աւազակներէ կը սպանուին (ԴԱՎ. 146), թէ անոնց Աղամիր սպասաւորը հազիւ կ'ազատի (ԴԱՎ. 147), թէ յետ ժամանակաց Լատիններ երկու սպանեալներուն ոսկրները Ֆրանկստան կը փոխադրեն,* իբրեւ ընծայս մարգարտեայ *(ԴԱՎ. 148), և թէ կը յաջողին ալ Շահաբասի ձեռքով Սպա-*

հան պահուած նշխարներէն պզտիկ մաս մը առանալ, և զայն զետեղել ի հիմունս եկեղեցւոյ վանացն Գլոյէ (ԴԱՎ. 149)։ Համաձայն այս պատմութեան, զոր Դավրիժեցին ականատեսներէն քաղելով գրած է, Ս. Հռիփսիմէի այժմեան գերեզմանին մէջ գտնուող ոսկրները այլեւս ամբողջը չեն, և ձեռքէ ձեռք անցած կտորներն ալ ատեւանդ ցրուած են, ինչպէս Նախիջեւանի Գուլթափա գիւղը Պօղոս Մոկացի վարդապետին դրածը (ԴԱՎ. 143), Մինաս Ակնեցի՝ Զմիւռնիոյ եպիսկոպոսին Իտալիա տարածը, և Պետրոս Խալարենց՝ Սաֆարի թոռին Պաղտատ փոխադրածը (ՉԱՄ. Գ. 573)։ Պատմուած եղելութեան թուականը ճիշդ յիշուած չէ, այլ իրդէպ է դնել չուրջ 1607'ին, երբ տակաւին Շահաբաս Թաւրիզ կը գտնուէր։

**ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԵՒ ԼԱՏԻՆՆԵՐ**

**1601**. Ս. Հռիփսիմէի նշխարներուն գողութեան գործը, որչափ ալ Հայոց համար յաջողութեամբ վերջացաւ, սակայն Մելքիսեդեկի համար մշտնջենաւոր անարգանքի փաստ մը եղաւ, Սիմոն տոմին խուլէֆա, այսինքն ոսկր ծախող կաթողիկոս՝ անունը տրուեցաւ եւեւէն (ԴԱՎ. 156), և երեւան իվեր յանդիմանուեցաւ, թէ ըստ արծայէն պատրօնէն թանկն հանեալ վճարեցեր ոսկւոյ (ԹՈՐ. Բ. 287)։ Սակայն Մելքիսեդեկ այսչափով իւր դիրքը խախտած չգտաւ. Դաւիթ մինչտ հեռու կը մնար Սպահանի մէջ, Աւետիս ընկճեալ դիրք մը կը պահէր, և Մելքիսեդեկ կրնար ուզածը ընել Մայրաթոռին մէջ՝ Ամիրգունա կուսակալը իրեն պաշտպան ունենալով։ Հայրապետական բոլոր հասոյթները ըստ հաճոյս կը գործածէր իւր լոյծ և ընտրեալ կեանքին, կամ յետնեաց և բազմօրեայ կաշառքներուն։ Մելքիսեդեկ որ իւր չահամոլ և փառամոլ գործերուն մէջ, ոչ մի անտեղի միջոց չէր խորշեր, նոր պարագայ մըն ալ մտածեց աւելցնել այդ շարքին, այն է դաւանական խնդիրները չահավաճառի միջոց դարձնել։ Լատին կրօնաւորներուն Հայաստանի կողմերը յաճախելու պարագային, և անոնցմէ մտերմութեամբ ստացած կաշառքները, և աւելին ալ ընդունելու յուսադրութիւնը, զինքն յորդորեցին աւելի մերձաւորութիւն ցուցնել և դէպ Արեւմուտք ձեռք երկնցնել, և զօրաւոր և հարուստ ըմբռնուած լատինականութեան արդիւնքներով բախտաւորուիլ։ Այդ մասին իրեն համամիտ գտաւ Զաքարիա Վանեցին, որ Վանէ մերժուած իր քովը կը գտնուէր (§ 1596), և Արեւմուտքի Հայերուն նուիրակութիւնը անոր յանձնեց 1610 մայիս 1 թուակիր կոնդակով, որ Իլվով, Կամենից, Սեչով և Եաշ չրջագայի, և արդիւնքներ հաւաքէ (11 ԱՄՍ. 72), անկէ ալ Իտալիոյ գաղթականներուն անցնի, և յարմար յարաբերութիւններ մշակելով Հռոմ ալ հանդիպի, և պապութեան հետ չահաւէտ և չահաւոր կապեր արդիւնաւորելու ջանայ։ Հռոմի դիւաններուն մէջ կը գտնուի գրուած մը Մելքիսեդեկի կողմէ Պօղոս Ե պապին ուղղուած 1610 մայիս 15 շաբաթ օր թուականով (ԱՁԱ. 121), մինչ մայիս 15'ը երկուշաբթի կը հանդիպի այն տարին։ Գրութիւնը ընդարձակ է (ԱՁԱ. 113—121), և արեւելեան ոճի ամէն կատարեալ ճոխութեամբ և օրինակներով և փոխաբերութիւններով կը բարձրացնէ պապն ու պապութիւնը, չողոքորթութեան վարժ ականջները զգուեցնելու չափ։ Մենք պիտի չփորձենք անոր վերլուծութիւնն ալ տալ, միայն պիտի դիտենք թէ ամենայն հաւանականութեամբ գրուածը Մելքիսեդեկէ թղխած չէ, այլ Հռոմի մէջ Զաքարիայէ պատրաստուած է, իւր պատգամաւորութիւնը յաջողցնելու համար։ Ասոր նշան կը նկատենք մայիս 15'ին նոր տոմարի հաշուով շաբաթ ըսուած ըլլալը, որ Մելքիսեդեկի գործածած հին տոմարին չի պատասխաներ, և նոյն գրութեան տոմարաց ֆրանգ երեւցած ըլլալը (ԹՈՐ. Բ. 289), ինչ որ Էջմիածինի մէջ չէր կրնար պատրաստուիլ, և վերջապէս Մելքիսեդեկի ալ նեղը մտած ատեն զայն իրմէ հեռացնել ուզելը, որուն համար Կեսարացին իրեն կը գրէր, որ թէ տեսայք և որ տալ չէր մերժանէր, պապին գիր մը գրէ, թէ ով ըՁատարին անուն վարդապետ, որ ի մեղանէ նորէրոյ եկն յայդ կողմանս, առանց մեր կամաց և գիտութեան իմ ծածուկ ասաց յետոյէր և պատեալ յեղ (ԹՈՐ. Բ. 292)։ Յայտնի չէ թէ ինչ արդիւնք կրցաւ ձեռք ձգել Զաքարիա իւր պատուիրակութեամբը, զի

միայն ոսկեղէն խաչ մը ընծայ, և Շահաբասի յանձնարարական մը գրելու խոստումը յիշուած են, երբ միւս կողմէն կը պահանջուի որ Մելքիսեդեկ հաւատոյ դաւանութիւն գրէ (11 ԱՄՍ. 74)։ Ասով կը յայտնուի թէ Զաքարիայի մատուցած չողոքորթ նամակն ալ չէ բաւած Մելքիսեդեկի հաւատքին վրայ վստահութիւն ներշնչելու։ Մելքիսեդեկի անձը և անոր չահամոլ ընթացքը, և գրուածին հեղինակութենէ զուրկ ըլլալը բաւական են հաստատել, թէ որչափ անհիմն են հռոմէականներուն անոր վրայ հիմնած փաստերը (ԱՋԱ. 121)։ Մելքիսեդեկ լոկ օգնական աթոռակից մըն էր, և ոչ Հայ եկեղեցւոյ տիրապէս ներկայացուցիչը, և իւր եպերելի ընթացքն ալ նկատի չառնելով, նա իւրովի և առանց ժողովի, և նոյն իսկ Մայրաթոռոյ միաբանութեան կողմէն վստահութիւն չվայելելով, չէր կրնար երբեք Հայ եկեղեցւոյ դաւանութեան վաւերական թարգմանն ըլլալ։

**1602.** Պատմութեանս մէջ գործունեայ դեր վարող անձանց մասին, որչափ հնար է լիակատար տեղեկութիւն տալու նպատակով, աւելորդ չենք սեպեր ինչ ինչ մանրամասնութեանց ալ մտնել, եթէ առաջնակարգ կարեւորութիւն ալ չներկայեն։

**ԳՐԻԳՈՐ ԴԱՐԱՆԱՂԵՑԻ**

Այդ կարգէն է Գրիգոր Դարանաղեցի վարդապետ, որուն 1604'ին Բաբերդէ Կ-Պոլիս գալը յիշեցինք (§ 1596), երբ պատրիարքական աթոռին վրայ կը գտնուէր Կեսարացին (§ 1597)։ Սակայն Կ-Պոլիս չուզեր մնալ, և Երուսաղէմ երթալու փափաքով ճամբայ կ'ելլէ, ուր սակայն չհասնիր, և ժամանակ մը Եգիպտոս կը մնայ, և այնտեղ կը ձեռնարկէ ամբողջական Աստուածաշունչի մը ընդօրինակութեան իր կիրառութեան համար, որ այժմ մեր ստացութիւնն է, թէպէտ քայքայեալ և քանի մը թերթեր պակաս, բայց կարեւոր յիշատակարաններ կը պարունակէ տեղտեղ։ Գրչութեան սկսած է 1605 Նոյեմբերին, և չարունակած է մինչեւ Ցեսու։ Միւս տարին 1606'ին եկած է Երուսաղէմ, ուր յունիս 15 շաբաթ օր, ի յաւր Պենտեկոստէի Հանգիստ կը լրացնէ։ Այստեղ ալ պիտի դիտենք թէ Հոգեգալուստի եօթնեակին շաբաթ օրը յունիս 14'ին կ'իյնայ, և 15'ին Եղիայի կիրակին է. սակայն ամէնէն մատղիր գրիչներ ալ վայրկեանը վայրկեանին չգրելով, այսպիսի թեթեւ անճշդութեանց կ'իյնան յաճախակի։ Այդ առթիւ իբր Երուսաղէմի պատրիարք կը յիշէ Դաւիթ արքեպիսկոպոս, որ է Մերածնեցին (§ 1503), Անդրէասի օգնականը և 1593'ին յաջորդողն, իսկ Գրիգոր մանուկն աբեղայ, որ է հուչակաւոր Պարոնտէրը, յիշուած է իբրեւ վերակացու հոգաբարձու և քաղցրերախօս ուխտաւորը։ Տարի մը մնացած է Դարանաղեցին Երուսաղէմ, ուր կը գտնուի տակաւին 1607 Նոյեմբեր 24'ին, և անկէ Կ-Պոլիս կու գայ դառնալու նպատակով, բայց շատ ժամանակ արգիլուած է ի քաղաքն Ճինէց ձորոյ, այսինքն Ճէլալիներու ասպատակութենէն (§ 1593), և ուր ուրեմն կրնայ երթալ ի Թիլոյ, այսինքն է իւր հայրենական գաւառը, և կը դադարի Բենկայի կամ Բենկլեանի վանքը, և ընդօրինակութիւնը կը չարունակէ, մինչեւ որ նորէն յաճէ Նեղչաց Թոխաթեայ հողէ Կ-Պոլիս կու գայ։ Այդ գալուստը իրդէպ է դնել 1612'ին (11 ԱՄՍ. 7)։

**1603.** Մինչեւ Դարանաղեցիին Կ-Պոլիս վերադարձը, նոր դիպուածներ տեղի ունեցած էին մայրաքաղաքի մէջ, և ինչպէս արդէն բսինք, Յովհաննէս

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ**

Խուլ յաջողած էր Կեսարացին տապալելով երկրորդ անգամ պատրիարքական աթոռ դրուել 1609'ին (11 ԱՄՍ. 4)։ Կեսարացին, ժիր և գործունեայ մարդ, գնաց ուրիշ կերպով օգտակար ըլլալ իւր ատենը։ Արդէն Կ-Պոլիս եկած էր Երուսաղէմի պարտքին համար, և պատրիարքութենէն ալ օգտուած էր այդ նպատակին, ուստի Եգիպտոս և Ասորիք և Միջագետք շրջելու ելաւ, և բաւական գումար հաւաքելով Երուսաղէմ գնաց, այնտեղի գործերը կարգադրելու։ Այդ ուղեւորութեան մէջ իրեն ընկերակից ունէր Մովսէս Տաթեւացի վարդապետը, նոյն ինքն ապագային բազմարդիւն կաթողիկոսը։ Մովսէս բնիկ Սիւնեցի էր, Բաղք գաւառէն, Խոտանան գիւղէն, Սարգիս Եզնկացի մեծ վարդապետին ու կաթողիկոսին աշակերտած էր անոր վերջին տարիները, և թե-

բեւս Էջմիածինէ անոր մօտ մնած էր։ Շատ սիրուած ըլլալով 15 տարեկան աբեղայ և քահանայ կը ձեռնադրուի, և Սրապիոնի վաղահաս մահուանը վրայ Գրիգոր Կեսարացիին ձեռքին տակ կը զարգանայ, Եգիպտոս և Երուսաղէմ կրօնաւորական վանքերը կ'ուսումնասիրէ, Ս. Յակոբեանց վանքին ալ կը ծառայէ, մեղրամոմը ճերմկցնելու արհեստը կը սորվի, և նորէն Կեսարացիին մօտ կը դառնայ անոր պատրիարքութեան ատեն, և Արեւելցիներու միջնորդութեամբ՝ վարդապետութեան աստիճան ալ կը ստանայ Ճծ հանդէսէ (ԴԱՎ. 219)։ Կեսարացին Մովսէսի հետ կը կատարէ վերջին շրջագայութիւնը, և 1610'ին Երուսաղէմ գալով, դիզեալ պարտքերը կը թեթեւցնէ որոնք 8000 ղրուշ եղած էին, կ'ըսէ Դարանաղեցին, և թէ 600 ղրուշ ալ տարեկան հարկ կը ծանրանար, և ամէն օր 5 կարմիր խուրճ կ'երթար պարտատեարց համար, այնպէս որ յետոյ լուծանէր հոռեր վանուց Հայոց։ Կեսարացին՝ Դաւիթ պատրիարքին անկարգած ըլլալն ալ տեսնելով, անոր գործէ ձեռք քաշել կու տայ, և վանքին ու աթոռին մատակարարութիւնը կը յանձնէ Գրիգոր Պարոնտէրին, որ աբեղայ եղած ատենէն աթոռին վերակացուն և հոգաբարձուն էր, և գլխաւոր գործունեայ անձը (11 ԱՄՍ. 4)։ Այդ առթիւ պէտք չէ Դաւիթը գահընկէց եղած նկատել, այլ միայն աթոռակցութեան ձեւը գործադրուած, Դաւիթին պահելով պատիւը, և Գրիգորին յանձնելով վարչութիւնը։ Գրիգորին նախընթացին գալով, բնիկ Գանձակեցի է եղած, Ապիտակոչէն գիւղէն և Վարդանեան ազգատոհմէն։ Տղայութեան ատեն թոնիր իյնալով անմիաս ազատելուն վրայ՝ ծնողքը ուխտած են զինքը Երուսաղէմի նուիրել, և անոնց վաղահաս մահուանէ ետքը ինքն Գրիգոր ուզած է անոնց ուխտը լրացնել, և Երուսաղէմ եկած է 1581'ին, Նորահաս երիտասարդութեան ատեն։ Ժամանակ մը Երուսաղէմ մնալէն ետքը, շրջած է Հռոմ ու Սիս, և Երուսաղէմ դառնալով մատակարարութեան գլուխ անցած է, և ներքին գործունէութեամբ և արտաքին յարաբերութեամբ օգտակար եղած է աթոռին, և ամէնէն յարգուած և պատուուած և իբր միակ կարող անձր ճանչցուած (ԱՍՏ. Ա. 283), և այս է որ Կեսարացին ալ կը յորդորէ զայն գործի գլուխը անցնել։

**ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ԲԱԺԻՆՆԵՐ**

**1604.** Երբոր Կեսարացին Կոստանդնուպոլսէ հեռու օգտակար ձեռնարկներու կը պարապէր, իւր կողմնակիցները առիթ կը գտնէին, ժամանակին գործածական եղած միջոցներով զօրանալ, և Յովհաննէս Խուլը պատրիարքութենէն տապալել, և նորէն Կեսարացիին պատրիարքութիւնը վաւերացնել տալ տէրութեան ալ կողմէն։ Նա ալ 1611'ին սկիզբները, դարձեալ յաղթական մուտք կը գործէր Կ-Պոլիս, այս անգամ աւելի խստութիւն բանեցնելով իւր հակառակորդ խումբին վրայ։ Բիչ ետքը 1612'ին Դարանաղեցին Տրապիզոնի ճամբով Կ-Պոլիս կը դառնայ (§ 1602), Վանեցին ալ յունիս 15'ին Հռոմէ կը հասնի (11 ԱՄՍ. 9), ուր գացած էր Արեւմուտքի Նուիրակութեան առթիւ (§ 1601), և Կեսարացին երկուքին հետ ալ կասկածով և սաստկութեամբ կը վարուի։ Ասիկայ իրեն նպաստաւոր չըլլար, վասն զի, նոյն իսկ Դարանաղեցին, որ կը խոստովանի, թէ ես բնաւ չէի ուզեր Խուլը, եթէ Կեսարացին այս հոլին ընտրեցներ զիս, կը յայտարարէ թէ ոփէղոռեցայ յուս կամս միանալ անոր։ Խուլն ու Դարանաղեցին ու Վանեցին միացած Կեսարացիին դիրքը կը խախտեն (11 ԱՄՍ. 9), որ թէպէտ ակամայ, բայց յանձրացեալ ի նոցանէ և հրաժարեալ, պատրիարքութիւնը կը թողու և իւր վիճակը Կեսարիա կը դառնայ (11 ԱՄՍ. 4)։ Երեք դաշնակիցները իրենց յաղթութեան արդիւնքը հաւասարապէս վայելելու համար, այս անգամ պատրիարքութեան հասոյթները մէջերնին կը բաժնեն, յարակից վիճակներուն վրայ հսկողութեան հետ, որով միայն կրնային արդիւնքներն ալ ապահովել։ Կ-Պոլիսը կ'առնէ Վանեցին, բնական դորութեն հին ըղղոլոյ երեւոյթն, որ է ըսել Կ-Պոլսոյ պատրիարքութեան նախնական հրովարտակին սահմանները, և բուն պատրիարք կը նկատուի։ Խուլը կ'առնէ ըմբռնոյն Ոսկանքին Բոց յՍտամպօլոյ, այսինքն է Եւրոպակողման վիճակները Ռոտոսթոյէ զատ, վասնզի անիկայ Դարանա-

*ղեցիին հայրենական գաղթականութիւնն ըլլալով, յարմար կը սեպուի անոր թողուլ, Անատօլու ֆօրտանտան, այսինքն Ասիակողման մերձաւոր վիճակներն ալ մէկտեղ* (11 ԱՄՍ. 9)։ *Բայց Կեսարացին Կեսարիոյ մէջ հանդարտ չմնաց, այլ բանակցութեան մտաւ Յովհաննէս Այնթապցի կաթողիկոսին հետ, օգուտ քաղել ուզելով Սսոյ աթոռին Կոստանդնուպոլսոյ վրայ վարած հին իրաւասութենէն* (§ 1489), *և Յովհաննէսը համոզելով անձամբ Կ-Պոլիս երթալ իւր ազդեցութիւնը գործադրելու և զինքն զօրացընելու։ Իրօք ալ Մինաս Թացախ և միւս Մինաս Կարնեցի եպիսկոպոսներն ալ մէկտեղ առնելով, չորսը միասին Կ-Պոլիս կու գան։ Երկու կուսակցութիւններ նորէն պայքարի կը մտնեն, Վանեցին և Խուլը մէկ կողմէն, Կեսարացին ու Այնթապցին միւս կողմէն։ Խուլը մինչեւ Ադրիանուպոլիս կ'երթայ, անձամբ կը ներկայանայ սուլտան Ահմէտի, և իրենց կողմին նպաստաւոր հրովարտակ մը կը ստանայ, որով վերջէն եկող չորսերը իրենց տեղերը կը զրկուին 1613 մայիս 25'ին, որ օր Դարանաղեցին ալ իւր Ասիակողման վիճակներուն այցելութենէն Կ-Պոլիս կը մտնէր* (11 ԱՄՍ. 10)։ *Յաղթութեան գլխաւոր գործիչը Խուլն ըլլալով, երեք դաշնակիցներու մէջ բաժիններու փոփոխութեան հարկ մը կը ծնի։ Վանեցին տեղի կու տայ և Խուլին կը թողու Կ-Պոլիսը իւր յարակիցներով, որոնց մէջ կը մտնեն նաեւ Կուտինա, Սեբաստիա և Կաֆա։ Վանեցին կ'առնէ Անատօլու ֆօրտանտան, այսինքն Իւսկիւտարէն սկսելով մերձաւոր Ասիակողմը, իսկ Դարանաղեցիին կը մնայ Ռումէլին Ղալաթիայով մէկտեղ* (11 ԱՄՍ. 10)։ *Այդ նոր բաշխումով Խուլը կը սկսի բուն պատրիարք նկատուիլ։ Սոյն միջոցին համար Կ-Պոլսոյ պատրիարքներու սովորական ժամանակագրութիւնը* (01 ՕՐԱ. 88) *պէտք կ'ըլլայ փոփոխութեանց ենթարկել, գլխաւորապէս Դարանաղեցիի յիշատակարաններուն ուսումնասիրութեամբ, և ըստ այսմ կ'երեւի, որ Խուլը 1615'էն անդին չէ կրցած աթոռին վրայ մնալ, և նորէն տեղի տուած է Կեսարացիին գրաւել պատրիարքական աթոռը* (11 ԱՄՍ. 11)։

ԷՋՄԻԱԾԻՆԻ ԳՈՐԾԵՐ

**1605.** *Կոստանդնուպոլսոյ եղելութիւնները այս կէտին ընդհատելով կ'անցնինք նկատի առնել Էջմիածինի մէջ տեղի ունեցած պատահարները։ Վերջին անգամ յիշեցինք Մելքիսեդեկի 1610'ին Զաքարիա Վանեցին Արեւմուտքի նուիրակ յղելը, և իւր անունով Պօղոս Ե պապին գրութիւն մը ներկայուած ըլլալը* (§ 1601)։ *Զաքարիայի նուիրակութիւնը երկու տարի տեւեց, և 1612'ին Կ-Պոլիս դարձաւ, և այնտեղ մնաց ու պատրիարք ալ եղաւ* (§ 1604), *ուստի դժուար է հաստատել, թէ Էջմիածին դարձած և Պօղոս Ե պապին նամակը Մելքիսեդեկի ներկայացուցած ըլլայ, ինչպէս կը յայտարարուի Մելքիսեդեկի կողմանէ 1613 մարտ 22 թուականով գրուած նամակի մը մէջ, որ պապական դիւանին մէջ կը գտնուի* (ԱԶԱ. 122)։ *Աւելցնենք որ յիշեալ թուականին Մելքիսեդեկ Էջմիածին ալ չէր, և կալանաւոր էր Շահաբասի ձեռքին տակ, ինչպէս պիտի տեսնենք, և պէտք է ըսել, թէ այս անգամ ալ Զաքարիա, իւր նուիրակութենէն օգտուելով, Մելքիսեդեկի անունով և կնիքով երկրորդ գրութիւն մըն ալ ուղղած է Հռոմ, ինչ որ իրեն դիրքին և հետեւած ուղղութեան նպաստաւոր պիտի ըլլար։ Ոմանք ինչինչ կցկտուր յիշատակներու հիմնուելով կ'ուզեն հաստատել, թէ Զաքարիա երկրորդ անգամ Հռոմ գացած ըլլայ 1613 մարտ 22'ի նամակը տանելու համար* (11 ԱՄՍ. 73), *սակայն այդ թուականին ոչ միայն Մելքիսեդեկ ազատ չէր պապին հետ թղթակցելու, այլեւ Զաքարիա ազատ չէր Կ-Պոլիսէ հեռանալու, ուր իբր պատրիարք Կեսարացիին հետ մրցելու զբաղած էր, և զայն հեռացնելէ ետքը, Ասիակողման վիճակներուն վերակացութիւնը ստանձնելով՝ անոնց այցելութեան ելած էր։ Առ առաւելն տեղը մնալով, և յանուն Մելքիսեդեկի գիր մը յարմարցնելով, Հռոմ ղրկած է, որեւէ մէկու ձեռքով։ Հետեւաբար այդ երկրորդ գրութեան վրայ ալ կարեւոր գրուածի պէս չենք կրնար նայիլ։ Թող որ եթէ ուղղակի Մելքիսեդեկէ ալ բղխէր, կաթողիկոսական օգնականի մը և չահամոյ անձի մը գրուածը՝ չէր կրնար ու-*

*նենալ այն պաշտօնական հանգամանքը, զոր համէականք կը սիրեն անոր ընծայել* (ԱՁԱ. 123)։ *Իղէպ է այս տեղ յիշել, թէ* 1611'*ին Շահաբաս իր երկրակալութիւնը ընդարձակելու և Վրաց թագաւորութեան հետքերը ջնջելու նպատակով եկած էր Վրաստան, և պատերազմով կամ խաբկանօք հեռացուցած էր անոնց իշխանները։ Կախեթի թագաւոր Թամրազ՝ Կովկասի լեռներն էր փախած, իսկ Տփխիսի թագաւոր Լուարսաբ՝ գերի իյնալով սպանուած էր։ Թամրազի տղաները ներքինացուելով Պարսից դեներն և ծառայութեան անցած էին, իսկ անոնց մայրը՝ Մարիամ թագուհին, ուրանալ չուզելուն համար կտտամահ տանջանքներով նահատակուեցաւ* (ԴԱՎ. 78-110)։ *Օսմանեանք կարծեցին պատեհ առիթ գտնել Պարսից դէմ պատերազմը նորոգելու, և* 1611 *գարունին Գույուճու Մուրատ փաշա, մեծ եպարքոս և սպարապետ և ճէլալիներու յաղթականը* (§ 1595), *Կ-Պոլիսէ մեկնեցաւ հզօր բանակով, և Թաւրիզի վրայ գնաց. իսկ Շահաբաս առանց դիմադրութիւն ցուցնելու՝ առաջարկեց հին հաշտութիւնը նորոգել, որպէսզի նոր տագնապի մը չի մատնուի, երբ ինքն Կովկասի կողմերը կը պատերազմէր, և ըստ այսմ խաղաղութեան նոր դաշնագիր կնքուեցաւ* 1612'*էն վեց տարի պայմանաժամով, և Պարսիկներէն տարեկան ընծայ մը տրուելու պայմանով* (ՉԱՄ. Գ. 579)։

**1606**. *Մարտիրոս Վաղարշապատեցի եպիսկոպոսը, որ էջմիածինէ արտաքսուելով Ասպահան գացած էր* (§ 1598), *այնպիսի տխուր գոյներով ներկայացուց Մելքիսեդեկի գործերը և էջմիածինի անխնամ և լքեալ վիճակը, որ Երեւանեցի և Ջուղայեցի մեծամեծներ, Դաւիթը բռնադատեցին և հարկեցին զնա գնալ յէջմիածին, տեսել և հոգալ զշինութիւն նորա, խոստանալով ալ թէ մեք օժանդակեմք քեզ յամենայն գործս և ի բանս։ Այս կերպով Դաւիթ, որ* 1604'*ի բռնի գաղութէն իվեր Ասպահան կը մնար,* 1612'*ին սկիզբները դարձաւ և եկաւ և էջմիածին հաստատուեցաւ Մարտիրոս եպիսկոպոսի հետ։ Հազիւ թէ զայն տեսաւ Մելքիսեդեկ, ինքն ալ Երեւանը թողուց և էջմիածին եկաւ, որպէսզի իրաւազուրկ չմնայ, սակայն Նախանձ, ախտակցութիւն և հակառակութիւն բորբոքուեցան Մայրաթոռի մէջ* (ԴԱՎ. 154), *և նորէն Մելքիսեդեկ զօրացաւ, յետ կարճոյ ժամանակաց շինութեան, և որք Մելքիսեդեկեանք էին՝ ի մարդկանէ կոչեալ զԴաւիթն՝ արհամարհանօք առնէին զնա։ Դաւիթ ձանձր լեալ մեկնեցաւ, քանի որ Ամիրգունա կուսակալ Մելքիսեդեկը կը պաշտպանէր* (§ 1598), *պարտաւորուեցաւ նոյնինքն Շահաբասի դիմել, որուն հետ լաւ յարաբերութիւն ունէր, և որ Վրաց պատերազմին պատճառով Գորի կը գտնուէր, ուր էր բանակին կեդրոնը* (ԴԱՎ. 155)։ *Շահաբաս լաւ ընդունելութիւն ըրաւ Դաւիթի, լսեց անոր գանգատը, և երբ լսեց թէ Սհակ տանն խալիֆան է* (§ 1601) *Դաւիթը նեղողը, որուն դէմ արդէն ինքն հակակրութեամբ լեցուած էր, միտքը դրաւ առիթէն օգտուելով զայն նեղը դնել։ Այդ եղելութեանց կարգին Դավրիժեցին մեւս աթոռակիցին՝ Աւետիսի, ոչ միայն ինչ դեր վարելը չպատմեր, այլեւ անունն իսկ չյիշեր։ Թէպէտ մենք չենք ուզեր Դարանաղեցիին և Բանաքեռցիին յիշատակութեանց հակառակ Աւետիսի գոյութիւնը ուրանալու չափ յառաջել, սակայն չենք ալ կրնար Դավրիժեցիին լռութեան վրայ զարմանքնիս զսպել։ Միակ բացատրութիւն կը գտնենք այն պարագային վրայ, թէ Աւետիս Դաւիթի ու Մելքիսեդեկի կամքին դէմ, անկարգութեամբ և հակառակ կանոնաց եղած էր, ինչպէս Դարանաղեցին ալ կը խոստովանի* (11 ԱՄՍ. 69)։ *Իսկ այս վերջին եղելութեանց պահուն, այսինքն* 1612'*ին, Դաւիթի և Մելքիսեդեկի միասին էջմիածին գտնուած ատեն, թերեւս Աւետիս արդէն հեռացած էր անկէ, վասնզի նոյն միջոցներուն նա գտնուած է Ամիդ* (ԹՈՐ. Բ. 289), *և քիչ ետքն ալ* 1613'*ին գացած է Երուսաղէմ՝ Ջուղայեցի և ուրիշ մեծամեծներու հետ, ուր և եպիսկոպոսական աստիճան է տուած Գրիգոր Պարոնտէրին, որ Երուսաղէմի աթոռին Վարչութեան գլուխը կը գտնուէր* (11 ԱՄՍ. 69)։ *Ամենայն հաւանականութեամբ միեւնոյն* 1613 *թուականն ալ Դաւիթ Մերտինցիին վախճանած տարին է* (ԲԱՌ. 52)։

ՄՐՑԱԿԻՑ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐ

**ՇԱՀԱԲԱՍ ԵՒ ԷՋՄԻԱԾԻՆ**

**1607**. Շահաբասի կեանքին ամենէն նկարագրական պարագաներէն մէկն է, կերպ կերպ կերպարաններու ներքեւ ծպտելով, առանց ճանչցուելու ժողովրդական խաւերու մէջ մտնել, և իւր գործերուն նկատմամբ եղած կարծիքները և դիտողութիւնները հարցնել և լսել ու իմանալ։ Շատ մը զուարճալի և հետաքրքրաշարժ դիպուածներ կը պատմուին իւր վրայ այս մասին, ուսկից քանիներ Դավրիժեցին և Բանաքեռցին իրենց պատմութեանց մէջ յառաջ բերած են։ Շահաբասի հետաքրքրութեան առարկայ եղող կէտերէն և գլխաւորներէն մին էր, թէ ինչ՞ւ իւր Պարսկաստան փոխադրած Հայերը, իւր կողմէ այնչափ պաշտպանութիւն ու դիւրութիւն տեսնելէ, և բարօրութիւն ու արդիւնաւորութիւն վայելելէ ետքն ալ (§ 1590), տակաւին իրենց Հայաստանին կը փափաքին, ուր պիտի չգտնէին Պարսկաստանի մէջ ունեցած վայելքնին։ Իրօք ալ այս միտքը ունէին ոչ միայն տեղեաց և անուանց օմանց, այլև նշանաւորաց և գեղեցկաց (ԴԱՎ. 151)։ Իւր յանծանօթս պտոյտներուն մէջ այդ բանին գաղտնիքը իմանալ ուզելով, քահանաներէ ու պառաւներէ, և նոյն իսկ բարեկեցիկներէ լսած էր, թէ Հայը չի կրնար զատուիլ Էջմիածինի կաթողիկէէն և Լուսաւորչի Աջէն, որ իրեն համար օրհնութեան աղբիւրներն են։ Եւ այս պատճառով միտքը դրած էր ոչ միայն Աջը Ասպահան բերել տալ, այլեւ Էջմիածինի տաճարը քակել տալով քարերը փոխադրել, և Ասպահանի մէջ վերաշինել, որպէսզի այլեւս Հայաստանի վրայ չմտածեն, և աւերեալ աշխարհն Հայոց, և շինեալ աշխարհն Պարսից (ԴԱՎ. 150)։ Ըստ եղած է թէ Դաւիթ կաթողիկոսն ալ զայս բանս եւս ասացեալ է առաջի շահին (ԴԱՎ. 156)։ Ըսեր է կամ ոչ, Շահաբաս ուզեց օգտուիլ Մելքիսեդեկի դէմ եղած գանգատէն, և առ այժմ գոնէ Աջը Էջմիածինէ հանել։ Անգամ մը երբ Նոր-Ջուղայի մէջ խօջայ Նազարին հետ կը պտտէր, անոր կը յայտնէ թէ այսինչ տեղ պիտի փոխադրէ և վերաշինէ Էջմիածինի կաթողիկէն։ Նազար հազիւ թէ Մայրտաճարը քակելու միտքը կը հեռացնէ ըսելով, թէ շահին քարեր չեն պակսիր իւր խորհուրդին կատարման, մինչեւ իսկ ոսկիէ կամ արծաթէ տաճար մը կրնայ կանգնել (ԴԱՎ. 153), և թէ քարերը տեղափոխելու պէտք չկայ։

**ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ**

**1608**. Դաւիթի և Մելքիսեդեկի խնդիրին դառնալով, Շահաբաս հրաման ըրաւ Մելքիսեդեկը ի դատէժս և ի տանջանս մատնել, և շինեալ խոլ զմարմնոյ զշիան իրեն ուտեցնել, իսկ Աջը Էջմիածինէն առնելով Գորի ղրկել։ Հրամանին գործադրութիւնը յանձնուեցաւ Թահմազղուլի բէկին, որ փոխանորդաբար Երեւանի կուսակալութիւնը կը վարէր, իւր հօր Ամիրգունայի բանակին հետ Վրաստան գտնուելուն համար։ Թահմազղուլի անմիջապէս Մելքիսեդեկը ձերբակալեց Երեւանի մէջ, և Էջմիածին բերելով, ի չար չարչարել, միւս միաբաններն ալ տանջանախոշտանգէր, ստիպելով որ Աջը յանձնեն, որոնք վերջապէս դարանը ցուցուցին, ուսկից Թահմազղուլի Աջը հանեց և առաւ, դարանին մէջ գտնուող ոսկետուփ մեծագին աւետարան մը և արծաթեայ խաչ մըն ալ մէկտեղ։ Անկէ ետքը Մելքիսեդեկն ու աւանդները առնելով Երեւան կը դառնայ, որ հրամայուած միւս պատիժը գործադրէ բերդին մէջ։ Արովհետեւ յօժարակամ չէր կրնար Մելքիսեդեկ իւր միսը խածնել և ուտել, զայն կռնակի վրայ կը տարածեն, ոտուըներէն ու ձեռուըներէն չորս ցիցերու կը պրկեն, բեւեռաքաշով՝ այսինքն է աքցանով թեւէն պատառ մը միս կը փրցնեն, և բռնի բերնին մէջ կը խօթեն, և փառուորներ կը սկսին ծեծել, մինչեւ որ ծամէ ու կլլէ, ուսկից ետքը մունետիկը կ'աղաղակէ, թէ կատարեցաւ հրաման Բռնաւորին, և Մելքիսեդեկը կապերէն կը քակեն, բայց չղթայակապ կը բանտարկեն շահին ղրկելու համար (ԴԱՎ. 157)։ Այս տարադէպ գործերը տեղի ունեցան յաւուրս պահոց փոխման Աստուածածնին (ԴԱՎ. 158), որուն բարեկենդանը 1612'ին՝ կը հանդիպէր օգոստոս 9'ին։ Մելքիսեդեկի չարչարանքը այսպէս տեղնիտեղօք կը պատմէ Դավրիժեցին, սակայն համբաւը շատ աւելի մեծցուցած է զայն, իբր թէ ուրագով շէրէփոբեռն, այսինքն ուսերը տաշեցին որպէս փայտ,

ինչ որ լոկ գրոյցէ առնելով գրած կ'ըլլայ Երզնկացի Ամիրասը (ՏԱՇ. 355)։ Զարչարանքին գործադրուելէն ետքը Ղուրաթ Նաջիրլու անուն սպայի մը պաշտօն յանձնուեցաւ, զինուորական պահպանութեամբ Մելքիսեդեկը կապանօք և աւանդները սնտուկով Գորի տանիլ Շահաբասին։ Սա աւանդները կը գնէ ու կը պահէ, իսկ Մելքիսեդեկը սպաննել պիտի տար, եթէ Ամիրգունայի միջնորդութիւնը չըլլար, բայց առջեւը հանելով կը սպառնայ, և չզթայակապ կը պահէ, ետքէն ալ Թահմազղուլի փոխկուսակալին կը ղրկէ, որ աւանդներուն և Էջմիածինի կաթողիկէին նշանաւոր քարերուն հետ Սպահան ղրկէ, ուր ինքն կ'ուզէր դատել Մելքիսեդեկը՝ պատերազմի դաշտէն հեռանալէն ետքը։ Ըստ այսմ ալ կը գործադրուի, Մելքիսեդեկ միշտ շղթայակապ Սպահան արգելական կը տարուի։ Աջն ու աւետարանն ու խաչը Սաֆարի տունը իպահ կը տրուին, Ս. Հռիփսիմէի նշխարներուն հետ, իսկ կաթողիկէին քարերուն առաքումը կը յետաձգուի, մինչեւ որ քակուին, պատրաստուին և ծանր կառքերով և յարմար եղանակի մէջ կարենան Էջմիածինէ Սպահան փոխադրուիլ։ Դավրիժեցին Մելքիսեդեկին կրած արկածներուն վրայ խորհրդածելով կը գրէ, թէ պարտ է սքանչանալ և հիացմամբ զարմանալ ըստ հատուցման գործոց, իբր զի այս կերպով անգամ մըն ալ ճշմարտուեցաւ թէ որով և մեղանչէ ոք, նովիմբ և տանջեսցի։ Իսկ Մելքիսեդեկը կը մեղադրէ, նախ բոլոր յոյսը մարդու, այսինքն Ամիրգունայի վրայ դնելուն, և երկրորդ Սրապիոնի գլուխը բերած փորձանքներուն համար (ԴԱՎ. 159), ինչպէս արդէն պատմած ենք (§ 1586)։ Թահմազղուլի բէկ որբութիւնները ղրկած ատեն Յովհաննէս քահանայի մը յանձնած էր անոնց ընկերանալ, իսկ Սպահան հասնելուն մեծահանդէս թափորով և եկեղեցական արարողութեամբ կատարուեցաւ անոնց ընդունելութիւնը։ Այդ վերջին եղելութիւնները տեղի ունեցան 1613 տարւոյն սկիզբները, և ասով կը տեսնուի, թէ Մելքիսեդեկի հնար չէր 1613 մարտ 22'ին ազատօրէն պապին նամակ գրել, և Զաքարիա կ'ըլլայ գայն յարմարցնողը, քանի որ Կ-Պոլսոյ մէջ էր, և տեղեկութիւն չունէր հեռաւոր Արեւելքի մէջ եղածներէն (§ 1605)։

**ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԵՒ ԴԱՒԻԹ**

**1609**. Երբ Շահաբաս Մելքիսեդեկն ու աւանդները ղրկեց, Դաւիթ Գորի կը մնար բանակին մէջ, և պատուաւոր դիրք կը պահէր, մինչեւ որ Շահաբաս հրամայեց որ երթայ Էջմիածին նստի և իր կաթողիկոսութիւնը վարէ։ Դաւիթ իրաւունք ունէր Ամիրգունայէ կասկածելու, Շահաբասին դիմեց ըսելով. Թագաւոր եմ, գեօ է խանն ամանաթէ, գիս խանին յանձնարարէ, մինչ խանը կը յայտարարէր թէ է վերայ գլխոյ իմոյ ունէ տեղի հանգստեան։ Իրօք ալ ցորչափ Շահաբաս Վրաստան կամ Ատրպատական կը գտնուէր, Հայաստանի շրջականները, Ամիրգունա շատ պատուով կը վարուէր Դաւիթի հետ, բայց երբ նա Սպահան գնաց ու հեռացաւ, սկսաւ խժռիլ, ոչ զգաստէր և ոչ խօսէր, կամ խրոխտանօք խօսէր և յանդգնեմ երեւէր (ԴԱՎ. 163)։ Մինչեւ այն ատեն Մելքիսեդեկ յաջողած էր Սպահանի Հայերուն միջնորդութեամբ ազատօրէն և ընդարձակ ապրիլ, կաթողիկոսութիւն ալ կը վարէր (ԴԱՎ. 162), Ամիրգունայի հետ գաղտնի կը թղթակցէր, նորէն Էջմիածին դառնալու և Մայրաթոռին տիրանալու միջոցներ կը խորհէր, մինչեւ իսկ կը մտածուէր որ Ամիրգունա է ծածուկ հնարէիւ իմն ազանցն ըմբռնէ (ԴԱՎ. 163)։

**ԷՋՄԻԱԾԻՆԻ ՔԱՐԵՐԸ**

**1610**. Այդ եղելութեանց սկիզբներն էր, որ Էջմիածինի կաթողիկէէն 15 նշանաւոր քարեր հանուեցան, որք են, 1. Սուրբ սեղանն յորոյ վերայ պատարագն սուրբ մատչէր. 2. Եւ այս սեղանոյս ոջանն. 3. Գրիգորոյ էջման տեղւոյ քարն. 4. Աւազանն. 5. Մէկ քար է կողման հարաւային աստիճանէ բեմին. 6. Եւ մէկ քար է կողման հիւսիսայնոյ աստիճանէ բեմին. 7-10. Չորս քար է չորից անկեանց եկեղեցւոյն. 11-12. Երկու քարք մոմփան որ է ուղթանոց, և 13-15. Երեք այլ որոշ քարինք է սալայարկ քարանց բեմին։ Այս 15 կտորները եղին ի մէջ կուլայ և կորեցին, զինուորական պահպանութիւն կազմեցին, նորէն նոյն տէր Յովհաննէս քահանայն (§ 1608) հսկող նշանակեցին, Նաղդի

*բէկ անուն սպայ մըն ալ գլխաւոր դրին, ըսդ Ճաաաչանի ժորանցն սայլեր պատրաստեցին* (ԴԱՎ. 161), *և գոմէշներ լծելով ճանպայ հանեցին* 1614'*ին, բայց մինչեւ որ Ասպահան հասան, հայկական ամանոըը անցած էր և ֆօխէալ էր դուրէն* (ԴԱՎ. 162)։ *Արդ ամանորը* 1614 *նոյեմբեր* 19'*ին իյնալուն, իրէպ է ըսել որ* 1614'*ին վերջերը կամ* 1615'*ին սկիզբները քարերը հասան Ասպահան, և քաղաքին մօտերը՝ Բաթուն կոչուած մահմետական գիւղին մօտ գտնուող գմբեթին մէջ զետեղուեցան, ուր Հայեր սկսան չարունակ ուխտի երթալ։ Քարերը հոն մնացին ժամանակ մը, ըստ ոմանց* 2, *ըստ այլոց* 7, *կամ աւելի եւս տարի* (ԴԱՎ. 161), *մինչեւ որ Բաթունցիք անոնց ներկայութիւնը իրենց համար չարագուշակ նկատելով, խնդրեցին որ փոխադրուին, և հանդէսով տարուեցան Նոր-Ջուղայի մէջ Խօջենց եկեղեցին, ուր Դաւրիժեցին աչքովը տեսած և համրած է* 15 *քարերը* (ԴԱՎ. 162)։

**1611.** *Քանի կը յառաջանար Հայերուն Պարսկաստանի մէջ տեղաւորուիլը, հետզհետէ կը նուազէր Շահաբասի անոնց նկատմամբ գործածած համակիր ընթացքը, և զանազան առիթներով խստութեանց կը ձեռնարկէր,*

ՓՈԽԹԿԱՑ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*մահմետական մոլեռանդութիւնն ալ խառնելով։ Շահաբասի բռնի տարած գաղթականութենէն ետքը, կամաւոր գաղթականութեան հոսանք մըն ալ սկսաւ ձէլալիներու յեղուզակութեանց երեսէն* (§ 1593), *և զանազան կողմեր փախչող Հայերուն մէջէն թեւ մըն ալ Պարսկաստան եկած էր, և ապաւինած Երեւան, Գանձակ, Թաւրէզ, Արտաւիլ, և շրջակայ գաւառներ։ Շահաբաս անոնք ա՛լ աւելի ներսերը փոխադրեց, և գլխաւորաբար Ասպահան և Ֆահրապատ գաւառները, և յատկապէս Փուքկայ կամ Գէչգունի աւանը։ Այս գաղթական խումբին վրայ վերակացու նշանակած էր Շահաբաս իր օգնական Ուղուրլու բէկ, և իրենց ձեռքին ներքեւ եղող երկու բաժիններու վրայ մէյմէկ հայ մելիքներ, Մուրատ Ղըրխէալան և Յովսէփ Ղարապաշ։ Քիչ ատենէ այդ խումբը չքաւորութեան մէջ իյնկաւ, ունեցածը ծախեց ու վատնեց, և պարտաւորուեցաւ արքունի առատաձեռնութեան դիմել։ Շահաբաս հաւանեցաւ օգնել, բայց ոչ նուիրատուութեամբ, այլ փոխատուութեամբ, և տուաւ Ղարապաշի բաժինին* 300 *և Ղըրխէալանի բաժինին* 100 *թուման, պայմանով որ* 3 *տարին փոխը վճարեն առանց տոկոսի, և ով որ չկարենայ վճարել, պարտաւոր ըլլայ կամ մահմետական ըլլալ և կամ իր զաւակները տալ, մանչերը* 4 *և աղջիկները* 3 *թուման հաշուով։ Այդ փոխատուութիւնը եղած էր* 1608'*ին, և Շահաբաս լռեց մինչեւ* 1613, *և ուր ուրեմն սկսաւ պահանջել, Ուղուրլու բէկին պաշտօն տալով գանձումներն ընել։ Հայեր ոչ միայն փոխը չշահեցուցին, այլ առածնին կերան և վատնեցին, և վճարման ատեն յուսահատութեան մատնուեցան, անոր համար Դաւրիժեցին սիրտին ցաւէն օրճչիա, անադօրոյն, անիմատ, անաանաճորոյ, էշնաճորոյ կը կոչէ այդ անհեռատես Հայերը* (ԴԱՎ. 112)։ *Հարկապահանջ պաշտօնեաներ և զինուորներ, կը բռնադատէին, շօրշօրէն, չօխէէն, հօրչանէէն, ճանփօրջէլ օանէէն. ժողովուրդին ունեցածն ալ՝ անոնց պէտքերուն ծախսուեցաւ, և էշան խօղա օղտօփ և չէօօօրփ* (ԴԱՎ. 113)։ *Աղաչանքներ և պաղատանքներ անօգուտ եղան Շահաբասը ողոքելու, որ պահանջատէրի իրաւունքով է փօփօփան օօ փօփօօօրօ դիմել կը պատասխանէր։ Խեղճ Հայեր զաւակնին ու ընտանիքնին հաւաքելով Շահաբասի առջեւ տարին իբրեւ վճարման գին, այլ սա լաց ու կոծէն ազդուածի պէս, չուզեց կենդանի վճարները առնալ, և առաջարկեց, որ միւս պայմանը գործադրուի, այսինքն է մահմետականութիւն ընդունին* (ԴԱՎ. 115)։ *Անհադին չփոթ և աղմուկ յառաջ եկաւ այդ պատճառով, զինուորներ կը բռնադատէին և կը խոշտանգէին, Հայեր կ'ընդդիմանային և կ'ողբային։ Այդ նեղ ժամուն օգնութեան հասաւ լատին եպիսկոպոս մը, անունը անծանօթ մնացած, որ Հայերը կրօնքի հաստատութեան յորդորելով, գաղտնապէս* 200 *թուման վճարեց Ղարապաշի խումբին և* 50 *թուման Ղըրխէալանի խումբին, և մնացածին համար ալ պայմանաժամ ուզելով կացութիւնը հանդարտեցաւ* (ԴԱՎ. 116). *բայց*

*չուտով խռովեցաւ։ Ղարապաշի խումբէն երկու Հայեր, Բաղդասար և Ախիջան, իրենց մելիքէն տասնական թուման կը պահանջէին, սպառնալով որ թագաւորին լուր կու տան թէ Ֆռանկ եղան, որ այնպէս դրամնին ճարեն։ Թէպէտ մելիքն ու գլխաւորներ խնդրեցին համբերել, որ արքունի պարտքէն ետքը իրենց ալ վճարեն, անոնք չանսացին, և անհիմն մատնութիւնը ըրին, իրենք ալ խլամացան և թլփատուեցան։ Շահաբաս բարկանալով սկսաւ Ղարապաշ մելիքը յանդիմանել, որ եթէ դրամի համար հաւատափոխ չէիք ըլլար, ինչո՞ւ Ֆռանկ եղաք, և մէկ կերպով չհամոզուեցաւ անոր յայտարարութեանց, թէ ոչ էմք դարձեալ, այլ կամք է հաստատն մեր, և ամէն կերպ խստութիւն հրամայեց գործածել, մինչև որ մահմետականութիւն ընդունին։ Յովսէփ Ղարապաշը գլխիվայր կախելով այնչափ բռածեծ ըրին, որ եղեւ անշնչանշ էր-րեւ զմռնեալ, և իր ժողովուրդն ալ «սկսան անխնայ ղորղորել, հարկանել և վիրաւորել, ի կախաղանի և յորոտայս, ի շղթայս և ի կոճեղս, ի բանտս և յորջելանս, սովով և ծարաւով, և այս զբազում աւուրս, և վերջապէս բռնութեամբ ի վայր կոխեալ թլփատէին», և կիսամեռ խեղճերուն բռնէն հաւանութիւն առնելով, առնտիս տարին Շահաբասի, թէ հրամանը կատարուեցաւ, և նա ուրախանալով իւրաքանչիւր տան գլուխ երեքական թուման պարգև բաշխել տուաւ (ԴԱՎ. 118)։*

**1612.** *Ասոր վրայ կարգը միւս բաժինին եկաւ, բայց Մուրատ Ղըրխեալան չուտով սկարացաւ և յանձնառու եղաւ իսլամանալ, իսկ իր ժողովուրդին համար յայտարարեց, թէ ոչ իրմէ, այլ Բաղդասար քահանայէն կախում ունի։*

**ՓՈՒԹԿԱՑԻ ՄԻՒՍ ԲԱԺԻՆԸ**

*Այս խօսքը լսածին պէս, Բաղդասար իր ժողովուրդը հսկումի հաւաքեց, ցայգապաշտօն կատարեց, պատարագեց, և ժողովուրդը հաղորդեց, և երբ առտուն խնդրակներ եկան, արիաբար անոնց հետևեցաւ։ Շահաբաս սաստիկ բարկութեամբ սկսաւ սպառնալ, աղուծներու յօշոտել տալ և չուներու կերակուր ընել, եթէ յանձն չառնու կրօնափոխ ըլլալ։ Քահանայն հանդարտօրէն կը պատասխանէ. Եթէ ասես ինչ էմօք կամօքն տանել յէմոյս հասարակ, եւ կամօք էմօք ոչ տանեմ. և թէ բռնութեամբ տարջոյցանես, ու է այդպէս հրամայեալ քեզ օրէնսդիրն քո. և թէ վասն դարձոյ քոյ ասես և խնդրես, գոլոմ տանել եմք, և որ ինչ հասցեալ է, զայն եաս այսօր և ի վաղիւն վճարեմք (ԴԱՎ. 120)։ Շահաբաս, որ իր բռնապետական գործերուն մէջ լաւ կողմ մը կը պահէր, յուզուեցաւ Բաղդասարի իմաստուն պատասխանէն, զգաց անոր ոյժը, պահ մը լռեց, և յետոյ հրամայեց. Գնացեալ տուր զմոցեալ դորդան քո, և այսպէս Ղըրխեալանի խումբը ազատեցաւ յերկուց վտանգէց, ի տանջանաց և յաղքատութենէ։ Ասոր վրայ լատին եպիսկոպոսը ներկայացաւ և իրաւունք պահանջեց Շահաբասէ, որ եթէ Ղարապաշի բաժինը ուրացութեան հպատակեցուց, ուրեմն դրամը պահելու իրաւունք չունէր. և Շահաբաս ետ դարձուց 200 թումանը։ Կ'երեւի թէ ներքնապէս ալ ցաւեցաւ Շահաբաս գործածած խստութեան համար, վասն զի այլեւս չծանրացաւ բռնի ուրացող խումբին վրայ, որոնք շարունակեցին քրիստոնէի կեանք վարել ազատել հասարակաց քան զառաջինն, վասն խղճմտանց ազատութեան, և հրապարակաւ կատարել եկեղեցական պաշտամունք, մկրտութիւն, թաղում. հաղորդութիւն և այլն, և մահմետականացն ոչինչ էր, այնպէս որ Դավրիժեցին կը վկայէ թէ որդիք նոցին ամենեքեան քրիստոնեայք են այժմ։ Իսկ մելիք Մուրատ Ղըրխեալան, պատճառանք մը յարմարցնելով Թաւրիզ, և անկէ Երուսաղէմ գնաց ընտանեօք, և անդ քրիստոնէաբար ապրեցաւ, և որովհետև արհեստիւ քարագործ էր, մինչև կեանքին վերջը վանքին համար աշխատեցաւ առանց վարձու, և ինքն ու կինն ալ հոն մեռան ու թաղուեցան (ԴԱՎ. 122)։ Փութկայ կամ Գէչգունի արկածները՝ 1613'ին սկսելով մինչև 1614 տեւած էին։*

**1613.** *Այդ միջոցին, ինչպէս առիթ ունեցանք յիշելու, Դաւիթ կաթողիկոս կը մնար Էջմիածին և Մայրաթոռի մէջ կը պաշտօնավարէր, թէպէտ Ամիրգունայէ լաւ աչքով չէր նայուած։ Իսկ Մելքիսեդեկ կը մնար Ասպահան, և նա ալ այդտեղ իբր կաթողիկոս*

**ՇԱՀԱԲԱՍ ԵՒ ԴԱՒԻԹ**

կը գործէր, թէպէտ Շահաբասէ չարտօնուած (§ 1609)։ Իսկ Սւետիսի համար չենք գիտեր, թէ ո՛ւր գացեր էր Երուսաղէմի մէջ ձեռնադրութիւն կատարելէն ետքը (§ 1606), զի միայն շատ աւելի ուշ Էջմիածին գտնուիլը գիտենք, առանց կարենալու երբ եկած ըլլալը ճշդել։ Այսպէս անցան քանի մը տարիներ, մինչեւ Թուրքաց նոր արշաւանքը Պարսից դէմ, հրամանատարութեամբ Օքուզահմատ փաշայի (ԴԱՎ. 161), որ է մեծ եպարքոս Խօքիւզ Մէհմէտ փաշան, որ 1615 մայիս 22ին Կ-Պոլիսէ մեկնեցաւ, բայց ձմեռը Հալէպ անցուց, և 1616 գարնան բացուելուն կամաց կամաց յառաջացաւ, Նախիջեւանը գրաւեց 40 օր պաշարելէ ետքը, քանի մը յաղթութիւններ ալ տարաւ Պարսիկ զօրավարներու վրայ, և եկաւ Երեւանը պաշարել (ԺՈԽ. 200)։ Շահաբաս անձամբ եկաւ քաղաքին պաշտպանութեան, և իւր բանակը հաստատեց Գառնիի լեռները, ուսկից Օսմանեան բանակը նեղեց, Երեւանի պաշտպանութիւնը վարող Նեհավէնտ զօրավարն ալ լաւ դիմադրեց, ձմեռուան ցուրտն ալ վրայ հասաւ, և Խօքիւզ Մէհմէտ ձեռնթափ Կարին դարձաւ (ԴԱՎ. 200)։ Այդ պատեհէն օգտուեցաւ Դաւիթ «Դաւիթ փոյթ ելեալ խանէն», այսինքն Ամիրգունայի, Շահաբասի մօտ երթալ, և նորէն գանգատիլ Ամիրգունայի ընթացքին և Մելքիսեդեկի գրգռութիւններուն մասին։ Շահաբաս նպաստաւոր կերպով ընդունեցաւ գանգատը, բայց քաշուեցաւ Ամիրգունայի դէմ բան մը ընել, որ կարող և օգտակար պաշտօնեայ մըն էր, և բոլոր ցասումը Մելքիսեդեկի վրայ դարձնելով՝ Չէրքէզ Իբրահիմ սպային հրամայեց, որ իսկոյն երթայ զայն իրեն բերէ Ասպահանէ, մինչ Մելքիսեդեկ պտոյտի ելած էր։ Իբրահիմ ետեւէն գնաց, և Գանդիման գաւառի Բաթակ գիւղը գտաւ զայն, և շղթայի զարնելով իջեցուց Ասպահան, անկէ ալ բերաւ Վայոցձոր, ուր եկած էր Շահաբաս Գառնիէ դառնալով։ Դաւիթ տակաւին Շահաբասի հետ կը մնար, և տեսնելով որ նա Մելքիսեդեկը շղթայակապ պահելով գործը կը ձգձգէ, և անմիջական նպաստաւոր որոշման յոյս չկայ, խիթալով ալ նորէն Էջմիածին դառնալ, հրաման խնդրեց Ասպահան երթալ, և Շահաբաս արտօնեց, Զղախաու գաւառի Ֆարնտիկան գիւղի հասոյթն ալ իրեն «ռոճիկ կենաց» պարգեւելով։ Դաւիթի մեկնիլը կրնանք դնել 1617 տարւոյ սկիզբները։ Իսկ Շահաբաս հետզհետէ եկաւ Վայոցձորէ Նախիջեւան, ուր վաղանցուկ եղած էր Օսմանեանց գրաւումը, և անկէ ալ Ագուլիս որ է Գողթն (ԴԱՎ. 165)։ Ինչպէս կը տեսնուի այս միջոցին Մայրաթոռը բոլորովին անտէր անտէրունջ կացութիւն մը ունեցաւ, Դաւիթ Ասպահան քաշուած, Մելքիսեդեկ շղթայակապ բանտարկուած, և Սւետիս թափառող աստանդական։ Արդէն լքեալ և ամայացեալ Էջմիածինը՝ ասորձան մը եւս աւրուելու և քանդուելու ճանպուն մէջ մտած էր. արդէն մայր տաճարն ալ կիսակործան կերպ մը առած էր 15 կտոր գլխաւոր քարերու վերցուելովը (§ 1610), և ով գիտէ որչափ ուրիշ աւերածներ ալ գործուած էին անտնք հանելու համար։

**1614.** Շահաբաս կը սիրէր ամէն կողմ համակրական ցոյցեր տեսնել, ուստի ժողովուրդն ալ կրցածին չափ հանդէսներ կը պատրաստէր անոր գալուն կամ անցնելուն, բոլոր ժողովուրդը մեծով ու պզտիկով զայն կը դիմաւորէր, զարդարուն զգեստներով, ծաղիկներով և մրգեղէններով ցինքը կը պատուասիրէր, բուրումներ կը ծխէր, իսկ գուսաններ և երգեցողներ արուեստական նուագարաններով կը նուագէին և ընտրեալ վայելչահասակ ու գեղեցկատես երիտասարդներ և աղջիկներ «ըմպէին ոսկի բաժակօք մատուցանէին շահին»։ Եկեղեցական դասակարգն ալ շուրջառ և շապիկ հագած, խաչալամ և աւետարան բարձրացուցած, խնկօք և մոմեղինօք, զանգակով և ծնծղայիւք «և երգէին ձայնին մինչեւ որ շահը հաճեցանէին յետ խելաց» (ԴԱՎ. 274)։ Ագուլիս հասած ատենն ալ այդ ամէնը կատարուեցան, ուր դպրատան վերակացու և ուսուցիչ էր Անդրէաս Ագուլեցի երիտասարդ և ուսեալ քահանայ մը։ Ինչպէս կ՚ըլլայ, Շահաբաս կը գիտէ «զի ամենայն էին կաշառք մանկանցն», և միտքը կը դնէ թէ ասիկայ նպատակով բրած են, որ տղաքը տղեղա-

ԱՆԴՐԷԱՍ ԱԳՈՒԼԵՑԻ

ցնեն, որպէսզի չըլլայ թէ ինքն հաճեալ ընդ նոսա ատենէն ընդ նոցանէ, ինչ որ կը ցուցնէ թէ այսպիսի բաներ ալ կ'ընէ եղեր։ Կոտուոյ բուածը եկեղեցականներուն գագաթին վրայ, աւելի կամ նուազ մեծութեամբ ածիլուած բոլորակ մասն է, որ Լատիններու հետեւողութեամբ սկսած է գործածուիլ, երբ ձեռնադրութեան մաշտոցին փոփոխութեամբ՝ խուզումն հերաց արարողութիւնն ալ մտած է Հայոց մէջ, թէպէտ ոչ միշտ և ոչ ամէն տեղ գործադրուած։ Ընողը գտնելու համար տղոց վերակացու քահանան հարցափորձի կ'ենթարկեն, և նա ուրիշը ձեռք չտալու համար ինքզինքը կ'ամբաստանէ։ Ասոր վրայ կը բանտարկեն, և կրկին կը հարցափորձեն, բայց իրմէ զատ ուրիշ մը չցուցնելուն համար, գետինը տարածելով սաստիկ կը գանակոծեն, և ուրացութիւն կ'առաջարկեն գլխապարտութենէ ազատելու համար։ Անդրէասի յանձն չառնելուն վրայ երկար կը փորձեն սպառնալիքներով և խոստումներով, միջնորդութիւններ ալ ընդունելի չեն ըլլար, նոյնիսկ չլսուիր Ծղնացի խօջա Անձրեւի կնոջ աղաչանքը, որում մայր էր տեսցեալ շահն։ Վերջապէս մահուան վճիռը արձակեց Շահաբաս, և ամբոխով տարին Անդրէասը կատարման տեղը, ուր շատեր, և նոյն իսկ երիտասարդ քահանային ծնողքը, զինքը արիութեան կը յորդորէին։ Հոն ալ շատ մը սպառնական և ահացուցիչ ձեւերէ ետքը, վերջապէս պատառեցին զորովայնն և ծակեալ զմէջ ոտանից ոտիցն պարանով գլխիվայր կախեցին, ուր կենդանի մնաց մինչեւ ի մօտս արեւուն, և կախաղանին վրայ հոգին աւանդեց 1617 նոյեմբեր 18'ին, որուն համեմատ տրէ 10 ամսաթիւը հաստատուն տոմարով է գրուած։ Մարմինը պահ մը անթաղ թողուլէ ետքը, քրիստոնեայք արտօնուեցան վերցնել, և թաղեցին Ագուլիսի մէջ Խցաձորի եկեղեցւոյ բակը (ԴԱՎ. 277)։

**1615.** Երեք ամիս չափ Անդրէաս քահանայի նահատակութենէն, և դեռ ձմեռնային եղանակը չէր անցեր, որ է ըսել 1618 փետրուարի մէջն էր, և Շահաբաս ալ տակաւին Ագուլիսի կողմերը կը գտնուէր, երբ խօսակցութեան կարգին, քրիստոնէից թշնամի Ագուլեցի Շահուուզ բէկ, կը յիշէ թէ Անդրէասի ըրածը Տաթեւ գտնուող Մովսէս վարդապետի թելադրութեամբ եղած է, և թէ Աստապատ գտնուող Պօղոս վարդապետ մըն ալ միեւնոյն ուղղութեամբ կը գործէ։ Շահաբաս իսկոյն կը հրամայէ երկուքն ալ ձերբակալել և բերել։ Մովսէս վարդապետ Տաթեւացին յիշած ենք արդէն (§ 1603), որ Կեսարացի Գրիգորի 1611'ին երկրորդ անգամ Երուսաղէմէ Կ-Պոլսոյ պատրիարքութեան գալուն միասին եկած էր, և 1612'ին անոր Կեսարիա քաշուած ատեն (§ 1614) անկէ բաժնուած էր, իւր հայրենիքին մէջ աշխատելու համար։ Մովսէս Տիարպէքիրի մէջ իւր առաջին վարդապետին Սրապիոն կաթողիկոսի գերեզմանին այցելելէ, և Վան ու Թավրիզ հանդիպելէ ետքը, Տաթեւ եկած և այնտեղ նոր վանական կեանք և գործունէութիւն հաստատելու կ'աշխատէր (ԴԱՎ. 219), ուրկէ առած է Տաթեւացի մակդիր անունն ալ, որով սովորաբար կը կոչուի, թէեւ բնիկ Խոտանանցի էր, Սիւնեաց աշխարհէն (ԴԱՎ. 217)։ Մովսէսի գլխաւոր նպատակներէն մին ալ էր գիւղեր և քաղաքներ պտտելով քարոզել և խրատել, և բարոյական ու քրիստոնէական կենցաղ վերարծարծել, որ իսպառ ինկած և աղաւաղուած էր ժամանակին ձախորդութիւններուն և եկեղեցականութեան անկումին պատճառով։ Սոյն նպատակի համար գլխաւոր տեղեր դպրատուններ կը բանար, և շրջականներէն ալ տղաքներ կը հաւաքէր և ուսուցիչներ կը կարգէր, ինչպէս եղած էր Ագուլիսի դպրոցն ալ (ԴԱՎ. 273), որուն վերակացուն էր Անդրէաս նահատակ քահանան (§ 1614)։ Այս աշխատութեան կ'ակնարկէր Ագուլեցի Շահուուզը՝ Մովսէսի վրայ խօսելով։ Անոր համանման կերպով աշխատող մըն էր Պօղոս վարդապետն ալ, բնիկ Մոկացի, Բար գիւղէն, Վարագայ վանքը Կարապետ Զագ վարդապետի աշակերտած, և անկէ ետքը ինքզինքը քարոզութեան նուիրած, նոյն իսկ Թավրիզ քաղաքի մէջ ժամատուն բացած, և եկեղեցիներ նորոգելու աշխատած։ Գողթան գաւառին վրայ առանձինն ջանք էր թափած, ուր մեծ հռչակ հանած էր

ՄՈՎՍԷՍ
ԵՒ ՊՕՂՈՍ

ցղնայի առաքելաշէն եկեղեցւոյն փակեալ դուռներուն հրաշալի բացումովը (ԴԱՎ. 204)։ Իր շրջագայութեանց մէջ ժամանակ մըն ալ Աստապատ մնացած էր, ուր Այթուն-Աւետիքը գող կրօնաւորներուն սպանութիւնէն ետ կեցուց (§ 1599), և անկէ ետքն ալ միշտ լծակից և աշխատակից եղաւ Մովսէս Տաթեւացիին՝ քարոզութիւնը ընդարձակելու և դպրոցներ բանալու ձեռնարկին մէջ, ինչպէս յանուանէ կը յիշուին Շոռոթի և Աստապատի դպրոցները (ԴԱՎ. 273)։ Այս երկուքն էին որոնց ձերբակալման հրամանը տուաւ Շահաբաս։

1616. Խնդրակներ շատ դժուարութիւն չքաշեցին, զի շարունակ հրապարակի վրայ էին երկու վարդապետներն ալ։ Երկուքն ալ ձերբակալեցին, վիզերնին անցուցին օղամանեաւ ըմպելով ի ծայրէ, և տուրքներնուն երկոքին ոտնալով, և յաւուրս ցրտաշեան յձեռայնոյ Շահաբասին բերին։ Նա առաջ կը մտածէր այդ երկուքն ալ նահատակել, բայց հարկաւ ցնցուած պիտի ըլլար Անդրէաս քահանայի եզերական պատահարէն, որ միտքը փոխեց, և տուգանքի ձեւը նախընտրեց, խորհելով թէ այս կերպով լինի աւելի օգուտ մեզ, և ընդ նոցա։ Տուգանքի քանակը 500 թուման նշանակեց երկուքին համար, բայց նոյն իսկ իր նախարարներուն միջնորդութեամբ 300 թումանի իջեցուց (ԴԱՎ. 278)։ Վարդապետները անկար և չքաւորք էին, ուստի արտօնութիւն ստացան զինուորներու հսկողութեամբ հանգանակութեան ելլել, և չուտով յաջողութիւն գտան իրենց սրբակեաց համբաւովը, որով ամէնքը անխնայաբար Բաժնէին զինս և զզարմանութիւնս առաջի կարգաւորացն։ Հանգանակութիւնը մինչեւ 700 թուման արդիւնաւորեց, որով ոչ միայն տուգանքը, այլ և ինչ որ այլք անդր խարճ ենոց վճարեցին, եւս և բազում գերիս և բանտարկեալս և տառապակոծեալս աղաչեցան վարդապետներուն շնորհիւ (ԴԱՎ. 279)։ Մովսէս և Պօղոս ազատութիւն ստանալով իրենց տեղերը դարձան, և իրենց առաջին քարոզութիւնները շարունակեցին, մինչ Շահառուզ Ագուլեցին քիչ օր ետքը սպանուեցաւ, ինչ որ բզած մասնութեան ստուածային պատուհասը նկատուեցաւ (ԴԱՎ. 279)։ Մելքիսեդեկ կաթողիկոս ալ տուգանքի համար կալանաւոր էր, բայց վարդապետներուն պէս բախտաւոր չեղաւ։ Շահաբաս Ագուլիսէն ելլալով Դանզի և անկէ Ասպահան եկաւ, և Մելքիսեդեկ կապանօք ուղէր ընդ բանակէ արքայի, անոր որոշման սպասելով։ Քաշած նեղութիւններէն ազատելու համար, քանիցս դիմում ըրած էր, որ երբէ մահուամբ և երբէ կենօք վերջ տայ իր տառապագին վիճակին։ Իսկ Շահաբաս յայտարարած էր, ոչ ողորմեմ և ոչ խնայեմ մինչեւ որ որոշեալ տուգանքը վճարէ։ Որոշուած գումարն ալ 300 թուման էր, երեք յանցանքներուն համար հարիւրական թուման, մէկը՝ Ս. Հռիփսիմէի նշխարքը կաշառքով ծախելը (§ 1599), միւսը՝ անհրաման Մուշկունէ ետ դառնալը (§ 1588), և երրորդը՝ իւրովի Ասպահանի մէջ կաթողիկոսութիւն վարելը (§ 1609)։ Մովսէս և Պօղոս վարդապետներուն տուգանքին համար առատաձեռն եղող Հայերը, անտարբեր կը մնային Մելքիսեդեկի նկատմամբ, և ոչ միայն Պարսիկ մեծամեծներ, այլեւ Հայ իշխաններ՝ Նազար, Սուլթանում, Միրվէլի և Հայկազն, իրեն հասկցուցին, թէ ուրիշ եղանակ չկայ իրեն, այլ գորովոյ տալ և գերծանել (ԴԱՎ. 166)։ Վերջին յուսահատութեան մէջ Մելքիսեդեկ առաջարկեց թագաւորին, որ ուզած տուգանքը կալանաւոր մնացած ատենը ճարել անհնար ըլլալուն, եթէ ազատ թողուի և կաթողիկոսութիւնը վարել արտօնուի, յանձն կ'առնէ տարեկան հարիւր թուման վճարել թագաւորին։ Այս առաջարկը առաւել չահաւոր երեւցաւ Շահաբասին, ուստի կոտորելոյ զինքն ... Նորա, կաթողիկոսութիւնը վարելու հրովարտակ տուաւ, շղթաներէն արձակեց, և թողուց որ երթայ և խոստացած գումարը հաւաքէ և վճարէ (ԴԱՎ. 167)։ Դավրիժեցին դիտել կուտայ թէ կերպ կերպ պատմուած են 100 թուման տարեկան հարկին պարագաները. ոմանք կ'ըսեն թէ միայն երեք տարուան համար, և ուրիշներ թէ մշտնջենաւոր էր Մելքիսեդեկի առաջարկը. և դարձեալ թէ միայն իր ազատութեան համար առաջարկած էր, իսկ ուրիշներ՝ կաթողիկոսութեան կացութիւնը դժուարացնելու դիտմամբ,

*գործած էր կ'ըսեն։ Հարկաւ յատակ յօդուածներով որոշ գծուած գործ մը չէր, բայց տեւական և տաժանելի բեռ մը եղաւ աթոռին վրայ։ Իսկ Մելքիսեդեկի ձեռքը զօրաւոր զէնք մը եղաւ, համարձակօրէն չրջելու և ժողովուրդին վրայ բռնանալու, նոյն իսկ արքունական արտօնութեամբ* (ԴԱՎ. 168)։ *Հազիւ թէ ազատութիւն գըտաւ, յուղեալ ժողովէ չրջագայութեանց ձեռնարկեց, նախ Տփղիս, անկէ Թաւրիզ, անկէ Ասպահան* (ԴԱՎ. 169), *ուր կը գըտնուէին ունեւոր ազգայինները։*

**1617.** *Այս կերպով տարօրինակ կացութիւն մը սկսաւ Մայրաթոռի մէջ 1618'էն սկսելով, երբ Մելքիսեդեկ նոր յանձնառութեամբ կաթողիկոսութեան տիրացաւ։*

**ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ՀԱՐԿԱՀԱՆ**

*Գրեթէ երկու տարի էր որ Դաւիթ Էջմիածինէ Գորի մեկնած էր* (§ 1613), *և անկէ ալ Ասպահան քաչուած, և Մելքիսեդեկ կալանաւորուած, որով անտէրունջ կը մնար Մայրաթոռը։ Հաւանաբար այդ կացութիւնն էր որ Ամդեցի Մելքոն դպիր 1617'ին գրած աւետարանը կը նչանակէր ի յանհաւրաղէտութեան ժամանակի ազգիս Հայոց* (ԹՈՐ. Բ. 418)։ *Այս անգամ տէր մը կը ստանար, բայց՝ աւելի բռնաւոր և կեղեքիչ հարկահան մը, որ ոչ Մայրաթոռ կը նստէր, և ոչ Մայրաթոռ կը հոգար, այլ թափառական ուր որ Հայ կը գտնուէր կամ ուր տեղէ դրամ չորթելու յոյս ունէր՝ հոն կը դիմէր, իրեն հետ ունենալով պետական պաչտօնէից և զինուորաց խումբ մըն ալ, որոնք մէկ կողմէն իրենց ծախքովը ծանրանայր ի վերայ ժողովրդեանն, և կաթողիկոսին ակնարկին վրայ ով ալ ըլլար, եպիսկոպոս թէ աբեղայ, երէց թէ աչխարհական, կոխէին յոտիցն և բրածեծ առնէին, մինչև ըստ կամաց իւրեանց առնուին դրամս* (ԴԱՎ. 167)։ *Դավրիժեցին Ղուլեր, այսինքն է Քուլլեր, որ է ծառաներ կը կոչէ Մելքիսեդեկի հետեւորդ խաժամուժը, իբր պետական ծառաներ, որոնք անոր հետ չրջելով իրենց զուարճութեան և քմակին կ'աչխատէին, և ոչ Մելքիսեդեկի հաստյթին, այնպէս որ երբ Մելքիսեդեկ արդէն 800 թուման վճարած եմ կ'ըսէր, Շահաբաս կը յայտարարէր, թէ և ոչ մի փող չէ հասեր իրեն։ Մելքիսեդեկ դրամ հաւաքելու նպատակով ոչ միայն անասելի բռնութիւններ կատարելու չէր խղճեր, այլև բազում անկարգութիւնս և օրինազանցութիւնս կաչառքով կը ներէր համարձակ, ինչպէս են, անարժանից ձեռնադրութիւն՝ երբեմն եպիսկոպոսաց և երբեմն քահանայից, վանքերու վիճակները մէկէն կտրել և միւսին չնորհել, կնաթողութիւն, երկակնութիւն, ամուսնութեանց համարձակ հրաման, և որ սոյն նման բազում անկարգութիւնս։ Մելքիսեդեկ մինակ ալ չէր այդ գործերուն մէջ, այլ իր եպիսկոպոսներն ալ թեւ թեւ ելած, նոյնը կը գործէին մանր քաղաքներու և գիւղերու մէջ, մինչ ինքը իրեն պահած էր գլխաւորները, ինչպէս Ասպահան, Թաւրիզ, Նախիջեւան, Երեւան, Տփղիս, և այլն* (ԴԱՎ. 170)։ *Երբ առաջին տարին լրացաւ 1619'ին, Շահաբաս հարիւր թումանը գանձելու պաչտօնով Ջիալ, Ասաթ, Ջրաղ և Բեհրամ բէկերը ղրկեց Մելքիսեդեկի վրայ, որ չի կրցաւ պահանջը վճարել, և այս չորսն ալ աւելցան Մելքիսեդեկի վրայ, և նստէին ի վերայ կաթողիկոսին ծառայք և երեւելիք իւրեանց, և զամենայն պէտս իւրեանց՝ զկերակրոց և զըմպելեաց ի կաթողիկոսէն առնուին* (ԴԱՎ. 169), *և զինեցողութեան իւրեանց զեղխութեամբ և շռայլութեամբ վարէին, այնպէս որ կաթողիկոսին հաչուոյն փոխառութիւններ կ'ընէին յուլվանէ յայլազգեաց, և այս պարտքերն ալ հարիւր թուման մօտաբոյն կամ տարեկան հարկին վրայ կը բարդուէին* (ԴԱՎ. 171)։ *Շուրջ վեց տարուան ժամանակամիջոց մը պիտի հաչուենք այդ եղկելի կացութիւնը 1618'էն մինչև 1624։*

**1618.** *Թէպէտ Մելքիսեդեկ Ա Գառնեցի պետական հրովարտակով կաթողիկոսութեան տէր էր եղած, այլ իր կանոնական կացութիւնը օգնական և աթոռակից ըլլալէ աւելի չէր, քանի որ բուն գահակալը Դաւիթ Դ Վաղարչապատեցին՝ իր դիրքը կը պահէր և իսկական կաթողիկոսն էր, Ասպահան քաչուած։ Թէպէտ նայր ի Բոցեայ, այլ նոյն չըրջանակին մէջ պաչտօն կը վարէր, և Յա-ցածին համար էՐ ղեղուն կողեալ ի բաժակեղէ, ողորէր և ըմպայր բերող ժամու* (ԴԱՎ.

**ԱՒԵՏԻՍԻ ՎԱԽՃԱՆԸ**

167)։ Իսկ միւս աթոռակիցն Աւետիս Ա միշտ մոռացուած ու անյիշատակ կը մնայ Դավրիժեցիին պատմութեան մէջ, որ լիագոյն և հաւատարմագոյն պատմիչն է, իսկ Դարանաղեցիին յիշատակները քաղուածներ կը գրեն, թէ Երուսաղէմէ եկքը գացած է Էջմիածին, առանց յայտնելու թէ 1613'է քանի տարի ետքը, և անկէ Վրաստան, և թէ «անդ եղեւ վախճան նորա» 1620'ին (11 ԱՄՍ. 69)։ Հակառակ ասոր նոյն Դարանաղեցին իւր Աստուածաշունչի յիշատակարանին մէջ (ԴՐՆ.) կը գրէ, թէ «կատարեցաւ կատարումն երգոյս ի մեծ թվականիս Հայոց Ռ և Հ և Ա, նոյեմբեր ամսոյ Է, և օրոյ Թ, ի հայրապետութեան Հայոց տեառն տէր Աւետիսին, որ այժմ յաջորդէ աթոռոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ», ուկից կը հետևի թէ 1622 նոյեմբեր 7'ին չէր վախճանած, և ոչ թէ Վրաստան, այլ Էջմիածին կը գտնուէր։ Յիշուած համեմատական և հայկական ամսաթիւերը իրարու չեն համեմատիր, զի անշարժ տոմարով նոյեմբեր 7, սահմի 29 է, իսկ շարժական տոմարով քաղոց 9, փետրուար 22 է, և պէտք է անճշդութիւնը վերագրել Դարանաղեցիին տոմարական սխալին։ Իսկ Աւետիսի մասին վկայած առեն ինքն իրեն կը հակառէ. և չենք գիտեր ինչ եզրակացութեան յանգիլ Աւետիսի գործունէութեան և վախճանին նկատմամբ։ Քանաքեռցի պատմիչին անցողակի յիշատակութեան համեմատ, Աւետիս կը գտնուէր Երևան, Ամիրգունա խանին մօտ, երբ Մեխլու բաբայ կամ բեւեռնակիր աբեղայ կոչուած խաբեբային գործը կը քննուէր (ՉԱՔ. Ա. 50)։ Թէպէտ նա խաբեբան խայտառակեց, սակայն երբ զայն ջուրի մէջ խեղդելու վճիռ տուաւ Ամիրգունա, «աղերսանօք կաթողիկոսին» խաբեբան ազատեցաւ, և երբ սահմանէն հեռացնելու համար խաբեբան Քանաքեռ կը հանդիպէր, կ'ըսուի թէ «էր անդ ի Քանաքեռ և կաթողիկոսն» (ՉԱՔ. Ա. 53)։ Սակայն այդ չափը չբաւեր Աւետիսի Էջմիածին գտնուած տարին ճշդելու, վասնզի պատմիչը թուական չնշանակեր, իսկ Ամիրգունա շատ կանուխէն Երևանի կուսակալ էր, 1604'ին Պարսի տիրապետութեան նորոգուելէն ի վեր։ Հետևապէս այդ կողմէն ալ պիտի չկարենանք Աւետիսի մահուան թուականը ճշդել։ Միւս կողմէն լոյս մը կ'առնենք Մովսէս Տաթևացիի նամակէն, ուր կը յիշուի Կեսարացիէն Մելքիսեդեկին գրուած յանդիմանագիրը, ուսկից օրինակ մը 1615 օգոստոս 27'ին Մեծ-Անապատ է բերուեր, և կարդացուեր է սեպտեմբեր 19'ին, որ է Խաչի երեքշաբթին, Հայկազն իշխանի այնտեղ շինել տուած եկեղեցւոյն նաւակատիքին առթիւ։ Այդ թուականին կ'ըսուի թէ «Աւետիսն կայ ի Էջմիածին և առնու զվեղարն», որ է ըսել կրօնաւորական ձև առած, և կը վկայուի թէ «յԵրուսաղեմայ եկն Կոստանդին աստուածախօսութեան վարդապետ ի նմա» (11 ԱՄՍ. 67), ինչ որ կը ցուցնէ թէ առաջ շատ աստուածավախութիւն չունի եղեր։ Ամէն առիթի մէջ, պէտք է 1620 և 1624 տարիներու միջոցին մեռած կարծել, և աւելի հաւանաբար Էջմիածինի մէջ, ուր նորէն եկած և նստած պէտք է ըլլայ, երբ Դաւիթ ու Մելքիսեդեկ բացակայ կը գտնուէին։ Աւետիսը ոչ իբրև գահակալ, այլ իբրև աթոռակից կաթողիկոս պիտի նկատուի, առանց բացատրել կարենալու թէ ինչու իր մասին այսչափ յամառ և կամաւոր լռութիւն կը պահէ Դավրիժեցին։ Ոչ ծագումը, ոչ անուանումը, ոչ արժանիքը, ոչ գործունէութիւնը և ոչ ալ վախճանը ստոյգ կերպով հաստատուած ըլլալուն, որոշ գնահատում մըն ալ չենք կրնար ընել իր վրայ, և աննշանակ գոյութեան մը յիշատակով կը փակենք իւր վրայ եղած ծանօթութիւնները։

**ՍԱՐԳԻՍ ՊԱՐՈՆՏԷՐ**

**1619**. Երբոր եկեղեցւոյ պետ ճանչցուող անձերը այդպիսի սոոր կացութիւն և գռըովելի նկարագիր կը ցուցնէին, և եկեղեցւոյ պաշտօնական դրութիւնն ալ անոնց երեսէն հետզհետէ խղճալի վիճակ մը կը ներկայացնէր, մխիթարական երևոյթ մըն է տեսնել, որ աստ և անդ վանքերու մէջ առանձնացած հոգեսէր եկեղեցականներ, անհատական ճիգերով կը սկսին եկեղեցական բարեկարգութեան աշխատիլ, ժողովուրդին բարոյականը բարձրացնելու ճիգեր կ'ընեն, և դառն ու եղկելի ժամանակներուն ներածին չափ, փորձիշատէ ուսումն ալ տարածելու և դպրոցներ բանալու անձնանուէր ճիգեր կը թափեն։ Այս կարգին

մէջ նախապատիւ տեղ մը պիտի տանք Սրապիոն Եդեսացի վարդապետին, որ անցողական կերպով Գրիգոր ԺԳ կաթողիկոս ալ եղաւ (§ 1584)։ Գովութեամբ պիտի յիշենք Սրապիոն Օձնեցի վարդապետը որ Բաբերդի Վահանաշէն վանքին մէջ կը գործէր (§ 1596), իսկ վախճանին վրայ տեղեկութիւններ կը պակսին։ Նոյնպէս Կարապետ Զագ վարդապետը որ Վանայ Վարագ վանքը (§ 1615) աշակերտներ և վարդապետներ հասցնելու կ'աշխատէր, և մեծ գաղութին առեն Ասպահան գնաց այցելութեան, և հոն վախճանեցաւ ու թաղուեցաւ (ՀԱՑ. 610)։ Ասոնցմէ աւելի նշանաւոր եղան Մովսէս Տաթեւացի և Պօղոս Մոկացի վարդապետներ, որոնք արդէն յիշեցինք (§ 1615)։ Ասոնց հետ արդիւնքով և հռչակով պայծառացաւ նաև Սարգիս Պարոնտէր Սաղմոսավանքի եպիսկոպոս և Մեծ-Անապատին առաջնորդը։ Սարգիս բնիկ էր Արագածոտն գաւառի Ցարենի գիւղէն, որ Կարբիի մօտ էր և այժմ է աւերակ։ Սաղմոսավանքի աշակերտած և այնտեղ յառաջացած, մինչև եպիսկոպոս և առաջնորդ ալ եղած էր, և կ'երևի թէ ինքն ալ անոնցմէ մէկն էր, որոնց խենէշ և խաբէական վայելչութեան աշխարհիս արհամարհելի կու գար։ Արագածի վրայ երէներու եռեւէն պտտող որսորդ մը, քարանձաւի մը մէջ մեռած ճգնաւորի մը հանդիպելով եպիսկոպոսին իմաց կու տայ, որ զայն գտնելով պատուով կը թաղէ, բայց դիպուածը մեծ տպաւորութիւն կը գործէ Սարգիսի վրայ, որ այն օրէն կ'որոշէ հեռանալ յաշխարհէ և հետևիլ առաքելական կարգաց (ԴԱՎ. 190)։ Իր նպատակին իրագործման համար Հայաստանի մէջ պէտք եղած ուղեցոյցը չգտնելուն, իր դիտումը նուիրագործելու համար Երուսաղէմ ուխտի կ'երթայ։ Հոն իր եռեւէն կը հասնի Կիրակոս Պոնտացին, Տրապիզոնի այրի քահանան, որ նոյնպէս հոգևոր կեանքի եռանդ զգացած և Սարգիսի օրինակէն քաջալերուած, անոր հետ միանալու միտքը յղացած էր (ԴԱՎ. 191)։ Երուսաղէմ հասնելնուն որոշ թուականը չունինք, միայն Դարանաղեցիէ (ԴՐՆ.) կը քաղենք, որ 1606'ին Երուսաղէմ եղած առեն հոն հանդիպած է համշիրակ եղբօր միոյ՝ կամաւոր աղքատին տէր Սարգիս եպիսկոպոսին Սաղմոսավանեցին, և Տրապիզոնցի կամաւոր աղքատին տէր Կիրակոսին, որոնք այնտեղ կը գտնուին 1607 փետրուար 2'ին ալ։ Երուսաղէմի մէջ Սարգիս ու Կիրակոս իրարու հետ միակամ և միաբան և միախորհուրդ կ'որոշեն կրօնաւորական բարեկարգութեան աշխատիլ, և Երուսաղէմի վանքերուն մէջ իմացածնին ու սորվածնին Հայաստանի մէջ գործադրել, ուր և քիչ ետքը կը դառնան։ Յարմար տեղ մը ճարելու համար կը դիմեն Սիւնիք, վանքերու և կրօնաւորութեան աւանդական կեդրոնը, և Տաթեւ, Զորովանք կամ Ցրուանց ու Թանահատ քիչ քիչ մնալէ ետքը, կը նախընտրեն Տաթեւի հին Անապատը կամ Հարանց-Անապատը, և զայն կը նորոգեն և կը կազմակերպեն, որ անկէ ետքը աւելի կը ծանօթանայ Մեծ-Անապատ անունով (ԴԱՎ. 192)։ Այդ հաստատութեան թուականը 1608'էն ետքը թողուլ յարմար չենք սեպեր, թէպէտև ոմանք մինչև 1610 կը յետաձգեն (ՁԱՄ. Գ. 563)։

**1620.** Շուտով կը հռչակուի Մեծ-Անապատին համբաւը, և ամէն կողմէ աշակերտներ և գործակիցներ կը հաւաքուին Սարգիսի և Կիրակոսի շուրջը, և մինչև իսկ անուանի արք, վարդապետք, եպիսկոպոսք և քահանայք, եկին և յարեցան ի նոսա։ Այս կարգին յիշատակութեան արժանի են Պօղոս Մոկացի և Մովսէս Տաթեւացի վարդապետներ, որոնց արդիւնաւոր գործունէութիւնէն և արկածներէն ինչ ինչ՝ պատմած ենք (§ 1615), և ինչինչ ալ տակաւին պիտի պատմենք։ Ասոնք առանց իրենց քարոզչական շրջագայութիւնները դադրեցնելու, Սարգիսի և Կիրակոսի մեծ օգնականներն եղան, դուրսէն նպաստներ հասցնելով, խորհուրդներ տալով և ուսուցչութիւն ընելով, ու առեն առեն Մեծ-Անապատը քաշուելով և անապատական կեանքի հետևելով։ Անապատին հիմնարկողներուն կարգին պիտի յիշենք նաև ոչ-կրօնաւոր մէկ մը, Ջուղայեցի Հախնազարի որդի Հայկազն իշխանը, որուն անունը անգամ մը տուինք (§ 1616), և զոր զինուորական քաջութեանը համար Շահաբաս շատ սիրեց, և կոչեցաւ անուն իշխան երէց, հանեալ

**ՄԵԾ-ԱՆԱՊԱՏԻ ԳՈՐԾԻՉՆԵՐ**

ի գործ ձեռամբեան (ՀԱՑ. 619)։ Հաւանաբար Հայկազնի իշխանութեան սահմանը Սիւնեաց երկրին կողմն էր, որ դիւրութիւն ունեցաւ պաշտպան կանգնիլ Սարգիսի հաստատութեան, և ինչպէս անապատին աշակերտներէն Ներսէս Մոկացի կը վկայէ, անապատ ոչէր լինէր գրչէր, գիրք հոյական (ՀԱՑ. 619)։ Հարկաւ Հայկազնի պաշտպանութեան շնորհիւ էր, որ Մելքիսեդեկ, երբ միւս վարդապետները կը հալածէր, Սարգիսի գործին չկրցաւ երբեք արգելք դնել։ Անապատի աշակերտներուն մէջ նշանաւորագոյն եղաւ Ներսէս Մոկացի վարդապետը, Մոկք գաւառի Աւկնջաւս գիւղէն, Թեղլու մականուանեալ, որ է Պեխաւոր, ուր ձեռ էր թեղն (ԴԱՎ. 30), յառաջագոյն Ամրտոլու Բարսեղ Գաւառցիին աշակերտած (§ 1504), և Անապատի մէջ ալ զարգանալէն ետքը, պահ մը նոյնտեղ ուսուցչութիւն ըրած, և անկէ մեկնելով նոր անապատ մը հաստատած է Լիմ կղզիին մէջ, որ շատ բարգաւաճ եղաւ Ներսէսի առաջնորդութեան ներքեւ, իսկ անոր 1627'ին վախճանելէն ետքը իրեն յաջորդած է Ստեփաննոս Մոկացի, նա ալ Անապատի աշակերտութենէն։ Ստեփաննոսի օրով Լիմայ միաբաններուն տարապայման աճելուն համար, մաս մը բաժնուած և Կտուցի մէջ նոր անապատ մըն ալ հաստատած են (ԴԱՎ. 191)։ Անապատի միաբաններէն են նաեւ, Թովմաս Տաթեւացի՝ որ ետքէն Շամախու վիճակին եպիսկոպոսն ու առաջնորդն է եղած. Կարապետ Վաղարշապատեցի եպիսկոպոսը՝ որ Էջմիածինէ վտարուելով Սեւան ապաւինած էր (§ 1598) և անկէ Մեծ-Անապատ քաշուեցաւ. Արիստակէս Շամբեցի՝ որ Սարգիսի մահուանէ ետքը Մեծ-Անապատին առաջնորդն եղաւ. Արիստակէս Բարկուշատցի՝ որ Տանձափարախի անապատին հիմնադիրն ու առաջնորդն եղաւ. Դաւիթ Շամքոեցի՝ Ղարամանենց ազնուական տունէն՝ որ Զարեքագետի Անապատը հիմնեց և վիճակին եպիսկոպոսն եղաւ. և այլք բազումք և յոլովք, որոնք այնու աւելի արդիւնաւոր եղան, որ Անապատին մէջ վարժուելէն ետքը, բարեկարգութեան գործը ընդարձակեցին, և յոյլովք ճգնացեալ լինէին անապատս և վանօրայս (ԴԱՎ. 192)։

**1921**. Կարեւորութենէ զուրկ չենք դատեր Մեծ-Անապատին մէջ պահուած կրօնաւորական կենցաղին համառօտ նկարագիրը քաղել, և Հայոց մէջ այդ միջոցին կազմուած վանական կեանքին կանոնները ճշդել։ Առօրեայ կեանքերնին սովորաբար առանձնական էր. Միայն կալ և ժամել ի խցի, և միայն ի սեղանն մարթաւոր և ի տեղի աղօթից ի միասին գալ։ Կը յիշուի նաեւ ի մարթաւորաց գործոց կոչնոցն միասին հաւաքուիլ. բայց թէ ինչ տեսակ աշխատանքներ էին այդ մարմնաւոր գործերը՝ որոշակի չէ յիշուած։ Անհատական ստացութիւնը արգելեալ էր, և կանոն էր ամենայն ինչ հասարակաց լինել։ Առաջնորդին կը պատկանէր իւրաքանչիւրին պէտքը հոգալ և ինչ որ պէտք ըլլայ բաշխել, իսկ միաբանը իւր խուցին մէջ յատուկ ուտելիք կամ ուրիշ բան ալ պիտի չպահէր։ Հնազանդութեան օրէնքը խիստ էր, և պէտք էր Թողուլ զկամս իւր և լինել հնազանդ և կատարող կամաց առաջնորդին։ Կերակուրը յօրն մի անգամ էր ի բոլոր տարին, գինին ու միսը խիստ արգելուած, և համապազօր պահք, չաբաթ և կիրակի և տէրունական օրերէն դուրս։ Միսը խիստ արգելուած ըլլալով՝ պէտք կ'ըլլայ պահք չեղող օրերը նաւակատիք իմանալ, իսկ տէրունական օրերն ալ տօնական պատշաճով ղատել։ Կերակուր և միրգ՝ ամէնուն միաչափ պիտի բաշխուէր ի մէջ մինչև ցերեկոյն, և պիտի ուտէին լուելեայն. ուտելու ատեն ալ սովորութիւն էր գիրս ընթեռնուլ, որ քիմքին հետ միտքն ալ զբաղի։ Ընթերցման գիրքը բացարձակապէս Աստուածաշունչ չյիշուելուն, սուրբ հայրերու գիրքերն ալ հարկ կը լինի իմանալ։ Զգեստի մասին վերջի ատեններ եկեղեցականներ սկսած էին վեղար և փիլոն միայն ի ժամ աղօթից գործածել, իսկ անկէ դուրս էբերէ աշխարհական զգեստն, ուստի որոշուեցաւ միշտ եկեղեցական զգեստով շրջիլ, աբեղայն փիլոնաւ և վեղարաւ, քահանայն փիլոնաւ, և պարզ միայնակեացը տափիլայիւն և տառատով։ Քուսիթայն կը բացատրուի թէ է գլխոյ ծածկ, այսինքն է գլխանոց մազեղէն կամ թաղեայ, և հաւանաբար սրածայր, իսկ քառակուսին արտաքին

МԵԾ-ԱՆԱՊԱՏԻՆ ԿԱՆՈՆՆԵՐԸ

*զգեստ մը պիտի ըլլայ, որուն ձեւը ճշդել դժուար է։ Կրօնաւորական զգեստը կը լրացնէին՝ ցփսի կամ մազեղէն ի ներքոյ զգեստոյն ի վերայ մերկ մարմնոյն, և շապիկ երկայն պճղնաւոր մինչև ցոտն, որ կապայի պէս բան մը պիտի ըլլայ, առջեւէն բաց պարսկական չապիկի պէս, և փոքր մաշկեղէն։ Իսկ իբր նիւթ՝ ամէն ազանելի պիտի ըլլար ասուեղէն, և ոչ բամբակեղէն, որ բեհեզ կամ դեղ ալ կը կոչուէր, և ոճնութիւն կը սեպուէր։ Քահանայից գլխանոցը չէ յիշուած, և քանի որ վեղար չունէին, քուսիթա գործածելնին կը հետեւի։ Ժամերգութիւնները ամբողջաբար կը կատարէին ըստ իւրաքանչիւր ժամուն զատ զատ, այսինքն ի մէջ գիշերի, առաւօտուն, արեւագալին, երրորդը, վեցերորդը և իններորդը իրարմէ որոշ, նոյնպէս հանգուցեալներն ալ։ Գիշերային ժամէն ետքը Յայսմաւուրք կը կարդացուէր պատշաճ չարականով մը, և առաւօտեան և երեկոյեան ժամերէն ետքը [illegible] կը կարդային։ Միանգամայն ուխտը կանոն սաղմոս անխափան կը քաղուէր ամէն օր ժամերու վրայ բաժանմամբ։ Շաբաթ և կիրակի և տէրունական օրերն հսկում էր բոլոր նախընթաց գիշերը։ Գիշերին ժամուն կ'աւելնային Յիշեցոք և այլն ձայնիւ, կանոնագլուխ ձայնիւ, հանգստեան չարական և աւետարան, և քաղուածք չարականաց։ Հսկումէ ետքը պատարագ կը մատչէր անխափան աղօթօք և սաղմոսօք, իւրաքանչիւրը իւր ծիսական զգեստով։ Պէտք էր մինչեւ պատարագին վերջը, այսինքն մինչեւ Իբրև ծագեցին աւետարանը, ահա և դողութեամբ աղօթել, և ձեռն ի սիրտ դնել աղօթելն։ Պատարագէ վերջն ալ ժամ մի տանջելն աղօթք պիտի ըլլար, և անկէ ետքը ճաշ։ Իսկ իբր բարեպաշտական կանոն, պէտք էր դընել զինքն և զերկրորդ՝ սուրբ յամենայն անմաքուր մտածութեանց հոգեկանաց և մարմնականաց, և յամենայն աղտոյ յոյզն և յերկեղին խոտորանել անխափան զանցանաց և զմտածութեանս աղտոյն, բայց որոշ չէ թէ հրապարակային էր այդ խոստովանութիւնը։ Ասոնք ընդհանուր կանոններ էին, որոց միաբանները պէտք էր հնազանդէին իբրեւ օրէնք, որովհետեւ ուխտադրութեան յիշատակութիւն չենք գտներ բնաւ, և սով կը սորբերէին Արեւմտեայց կրօնաւորութենէն։ Ասոնցմէ զատ իւրաքանչիւր միաբան զծածուկ առաքինութիւնս ալ ունէր, ոմանք ողորմութեամբ, ոմանք պահոց պնդութեամբ, ոմանք արթնակեցութեամբ, ոմանք արտասուահեղութեամբ, ոմանք լռակեցութեամբ, ոմանք հիւանդաց սպասաւորութեամբ, ոմանք այլ կերպիւ* (ԴԱՎ. 195—197)։ *Այդ նկարագիրէն կը տեսնուի թէ շատ զօրաւոր էր ճգնողական վերացեալ կեանքը, սակայն ինչպէս առաջ ըսածներնէս* (§ 1620) *և ուրիշ շատ մանրամասնութիւններէ կը քաղուի, գործնական կեանքն ալ խնամով մշակուած էր, մանաւանդ ուսմամբ և քարոզութեամբ և ժողովուրդի հոգածութեամբ, որուն համար նոր ճիւղեր ալ կը հաստատուէին։*

1622. *Վարչական տեսակէտէն Սարգիս Պարոնտէրն էր Մեծ-Անապատին հոգաբարձու է մարմնաւոր կողմանէ, և այս պաշտօնը իրեն վրայ մնաց մինչեւ իւր մահը։ Իսկ հոգւոց առաջնորդել էին Կիրակոս Պոնտացի քահանան, որ միշտ տէր Կիրակոս կը կոչուի, և թէպէտ այրի, բայց կ'երեւի թէ վարդապետութեան աստիճան չէ առած, և Պօղոս Մոկացի, Մովսէս Տաթեւացի, Ներսէս Մոկացի, ու Թովմաս Տաթեւացի վարդապետները։ Առաջին երեքը շրջուն կեանք ունէին, իսկ վերջին երկուքը բազում ժամանակս Սարգսի հետ մնալէ ետքը, Բչտաղք կամ Աղահէճք գաւառը քաշուեցան և Հօչանք գիւղի մօտ նոր անապատ մը բացին* (ԴԱՎ. 198)։ *Թէ Սարգիսի և թէ Կիրակոսի կեանքն ու գործունէութիւնը միակերպ ձեւ մը կը ստանան վանական շրջանակի մէջ, որով պատմութեան մանրամասնութիւններ կը պակսին, և վախճաննին ալ գրեթէ միաժամանակ տեղի կ'ունենայ մէկ տարուան միջոցին, թէպէտ հայկական երկու տարեթիւերու մէջ, այսինքն է ՌԿԹ և ՌՀ, առաջինին վերջերը Սարգիս, և երկրորդին սկիզբները Կիրակոս* (ԴԱՎ. 198)։ *Աւելցնենք թէ Հայ թուականին նոր տարւոյն սկիզբը* 1620 *Նոյեմբեր* 17'*ին կ'իյնար։ Ներսէս Մոկացի իբրեւ նշանաւոր պարագայ մը կը յիշէ, թէ ուխտ կարգեղող Անապատի հիմնարկուները, իշխանն ընդ վարդապետ, հայրապետն և առաջնորդն,*

ԳՈՐԾԻՉՆԵՐՈՒ ՄԱՀԸ

միեւնոյն է Հաշուը և Ժողովածուն Հայոց թըւին, այսինքն 1621'ին վախճանած են (ՀԱՅ. 622)։ Հայրապետը Սարգիսն է, և առանձնականը Կիրակոս, զորս յիշեցինք, և իշխանն ալ Հայկազն Հախնազարեանն է, որուն վրայ խօսեցանք (§ 1620), և ուրիշ տեղեկութիւն չունինք աւելցնելու իր գործունէութեան և մահուան վրայ։ Կը մնայ վարդապետը, որ է Պօղոս Մոկացին, զոր պարզապէս սուրբ կը կոչէ Դավրիժեցին, իր օրինակելի վարքին, քարոզչական գործունէութեան, կրած հալածանքներուն և ի կենդանութեան և յետ մահուան հրաշագործութիւններուն համար, և որուն գործունէութենէն ինչ ինչ յիշատակներ (§ 1615), և 1618'ին Շահաբասէ տուգանքի ենթարկուիլը պատմեցինք (§ 1616)։ Միեւնոյն տարին Մելքիսեդեկ ալ ազատութիւն ստացաւ Շահաբասէն, և կաթողիկոսութեան տիրացաւ 100 թումանի տարեկան տուրքի պայմանով (§ 1617)։

**1623.** Մելքիսեդեկ, որ տուրքին վճարման համար դրամ հաւաքելու կը շրջէր, իրեն գործին արգելիչ նկատեց Պօղոսը, որ իր քարոզութիւններով բարեգործական նախրատութիւններու կը յորդորէր ժողովուրդը,

**ՊՕՂՈՍ ՄՈԿԱՑԻ**

ուստի ամէն ջանք և միջոց գործածեց զայն լռեցնելու։ Կանուխէն ալ սպառնացած էր վարդապետին թէ նշան յերկնէ մերձ, և ճառագայթ յերկրէ էր առաւել էն. երբ որ Մոկք Աղթամարի կաթողիկոսութեան կը պատկանէր, և թէ ոչ է պէտս մեզ խաբեբայ և նորահնարոյ վարդապետութեան էր (ԴԱՎ. 207), այլ վերահաս պատահարներ, լռեցուցած էին կալանաւոր Մելքիսեդեկը, և Պօղոս համարձակ շարունակած էր։ Բայց երբ ազատութիւն ստացաւ, կրկին սկսաւ Պօղոսը հալածել, և Նախիջեւանի մէջ անոր հանդիպելով, դարձեալ հրամայեց իր սահմանէն ելլել, թէ ոչ կ'ըսէր, զամենայն եկեղեցեաց՝ զոր դուք շինեցէք, ի վերայ գլխոյ ձեր քակեցից (ԴԱՎ. 207)։ Պօղոս յուսահատ կ'ուզէր հեռանալ, բայց Շամբ գիւղի մէջ, իրեն հիացողներ թող չտուին, ընդհակառակն յորդորեցին Շահաբասին դիմելով արտօնագիր ստանալ. ուստի ուղղուեցաւ դէպի Աղուանք, ուր կը գտնուէր թագաւորը։ Արագրար գիւղի մէջ, այլազգիի մը հիւր եղաւ, և անոր ամուլ կինը օրհնեց, որ միւս տարին զաւակ ունեցաւ։ Յօթուկլու գիւղին մէջ Շահաբասի ներկայանալով, փափաքուած արտօնագիրը ստացաւ, սակայն Մելքիսեդեկ նոր դրպարտութիւններով զայն Ամիրգունայի ամբաստանեց, որ թէպէտ վարդապետը ձերբակալեց, այլ Պօղոսի խօսքերէն և գործերէն գրաւուելով, զայն պատուեց, և Մելքիսեդեկի հրամայեց հանչաւիլ։ Սա տեսնելով որ այդ եղանակը չյաջողեցաւ, Թաւրէզի իշխան Ղառչղայ (ԴԱՎ. 215) կամ Ղարչղայ խանին դիմեց (ՀԱՅ. 620), եկեղեցական և աշխարհական ընկերներ ալ մէկտեղ առնելով, բայց այնտեղ ալ այլ կապարամ ձործոյն եղեւ որդեւ և զա Ամիրգունայ խանին կապարեցաւ (ԴԱՎ. 215)։ Այդ եղելութիւններ տեղի ունեցան միեւնոյն 1615 տարին (ՀԱՅ. 620)։ Այդ առթիւ Ներսէս Մոկացին կաթողիկոսանալ երեւ կը յիշէ իբրեւ հակաաթոռ (ՀԱՅ. 620), իսկ Դավրիժեցին Սահակ կաթողիկոսի անունն ալ կու տայ (ԴԱՎ. 216)։ Սակայն 1618'ին Սահակ դեռ կաթողիկոսացած չէր, և Դաւիթ ալ Աւագահան քաշուած էր, իսկ Աւետիսի գոյութիւնը երկու պատմողներն ալ կ'անգիտանան, և պէտք է ըսել թէ Մելքիսեդեկ միայն էր գործողը, և Սահակ, որ յետոյ կաթողիկոս եղաւ, իրեն գործակիցն էր։ Մելքիսեդեկ տակաւին չհանդարտեցաւ, և Պօղոսի վրայ բռնացաւ, և որովհետեւ Մելքիսեդեկի պետական հանդերձանքը և զինուորական հետեւորդները ամէնուն սարսափ ազդած էին (§ 1617)։ Պօղոս ճար անճար և անօգնական, և ձեռագիր տուաւ ոչ շրջել և ոչ վարդապետել, և թէ զայսոսիկ առնեմ, լինիմ ես ընդ նզովիւ։ Ասոր վրայ քաշուեցաւ Մեծ-Անապատ, և հոն կայր մեծացաւութեամբ (ԴԱՎ. 215), մինչեւ իր կեանքին վերջը 1621'ին, ուր վախճանեցաւ, միւս երեքին՝ հայրապետին, առանձնականին և իշխանին հետ միեւնոյն տարին (ՀԱՅ. 620)։

**1624.** Էջմիածինի կողմը կատարուած եղելութեանց կապակցութիւնը չխզելու համար, պարտաւորուեցանք ետեւ թողուլ Կոստանդնուպոլսոյ կողմը հանդիպածները, ուր 1613'ին նոր բաշխում մը կատարած էին

*Խուլն ու Վանեցին ու Դարանաղեցին իրենց մէջ, և Խուլն եղած էր պատրիարք հռչակուողը (§ 1604)։*

**ԿԵՍԱՐԱՑԻՆ ԵՒ ՄԵԼՔԻՍԵԴԵԿ**

*Կեսարացին Նորէն Կեսարիա քաշուած, երբէք ձեռքէ չէր թողած պատրիարքութեան հետապնդումը, և իւր հակառակորդ խումբը տապալելու միտքերը, ինչ որ շատ դժուար բան չէր, քանի որ բոլոր մըրցումը պետական շրջանակները շահելով կը կատարուէր։ Այս մասին մեծ նշանակութիւն ունէին պետական պաշտօնեաներու մօտերիմ եղող ազգայինները, երբ պետական պաշտօնեաներն ալ յորափոփոխ վիճակ ունէին։ Կեսարացին անգամ մըն ալ Խուլը և իրեններըը տապալելով եկաւ ու պատրիարքութիւնը գրաւեց, իսկ Թուականը ճշդելու համար կը լուսաբանուինք Մելքիսեդեկի ուղղած իւր գրութենէն, ուր իշխանական ոճ մը կը գործածէ, զոր չէր կրնար գործածել՝ եթէ Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռին վրայ չըլլար։ Այդ գրութեան բուն թուականը յիշուած չէ, ոչ անոր թերի պատճէնը հրատարակողին (ԹՈՐ. Բ. 279), և ոչ ամբողջական օրինակը տեսնողին կողմէ (11 ԱՄՍ. 67). բայց միայն կ'ըսուի թէ 1615 օգոստոս 27'ին պատճէնը Հայաստան հասած էր, և հարկաւ անկէ առաջ գրուած էր, անկէ ալ առաջ, գոնէ 1615'ին սկիզբները Կեսարացին պատրիարքական աթոռը նորէն գրաւած պիտի ըլլար։ Իսկ 1615'ին սկիզբները Կեսարացիին Մելքիսեդեկի կծու գրութիւն մը ուղղելուն չարժառիթը մեկնելու համար՝ պէտք է յիշենք, որ այդ միջոցին Մելքիսեդեկ Ասպահան կը գտնուէր և համարձակօրէն այն կողմերը կաթողիկոսութիւն կը վարէր, և միանգամայն Դաւիթը էջմիածինէ հեռացնելով, նորէն Մայրաթոռը ձեռք անցընելու կ'աշխատէր (§ 1610)։ Իւր նպատակին յարմար առիթ կարծած է Օսմանեանց նոր արշաւանքի պատրաստութիւնները Պարսից դէմ (§ 1613), և հետեւաբար անոնց յաղթութեան հաւանականութիւնը։ Ուստի Երեւանի ու էջմիածինի նորէն Օսմանեանց տիրապետութեան անցնիլը նախատեսելով, կանխած է Կոստանդնուպոլիս դիմումներ ընել, որ զինքն կաթողիկոս ճանչնան, և ոչ Դաւիթը։ Այդ դիմումը ըրած կ'ըլլայ Խուլ Յովհաննէս պատրիարքին վրայ վստահանալով, որուն հետ համերաշխ և մտերիմ էր, սակայն նոյն միջոցին Խուլին իյնալովը և Կեսարացիին բարձրանալովը, այս վերջինը, որ երբեք համակիր չէր Մելքիսեդեկի, տարբեր կերպով կը պատասխանէ անոր։ Ժամանակակից պարագաներու բաղդատական ուսումնասիրութիւնն է, որ այդ կապակցութիւնները մեզի կը թելադրէ, քանի որ կցկտուր յիշատակներով պատմութեան շարքը կազմել կը պարտաւորուինք։*

**ԿԵՍԱՐԱՑԻԻՆ ԳԻՐԸ**

**1625.** *Կեսարացիին գրութեան վերջին մասը՝ պարզօրէն կը յայտնէ անոր նպատակը, և կը հաստատէ մեր բացատրութիւնը։* Եթէ զայս առնես, *կ'ըսէ,* կամ ընդ[illegible] [illegible] կաթողիկոս, և թէ ոչ, դու գիտես *(ԹՈՐ. Բ. 295)։ Ուրեմն Մելքիսեդեկը ընդունելու կամ չընդունելու կէտն էր խնդիրին էութիւնը և գրութեան շարժառիթը։ Կեսարացին կը գանգատի թէ եկեղեցական կարգերը խանգարած և անկարգութեան մատնուած են թուլամորթ առաջնորդներու երեսէն, և կը յաւելու,* [illegible]*, և կ'անցնի ի* [illegible] *յիշել։ 1.* Ի վերայ [illegible]*, կ'ըսէ,* [illegible]*, և կ'աւելցնէ թէ նա անարժաններու ալ այդ աստիճանը տուած է։ Կը յիշէ Մրգիկ մը,* որ ի Մուշ [illegible]*, և Կարապետ Պըռկնտօշը,* [illegible]*, այսու հանդերձ երկուքն ալ Մելքիսեդեկէ եպիսկոպոս ձեռնադրուած էին (ԹՈՐ. Բ. 281)։ 2. Կ'ըսէ.* [illegible] *և երկար կը պատմէ անոնց գործած անկարգութիւնները, այնպէս որ* [illegible] *(ԹՈՐ. Բ. 282)։ 3. Ասոր հակառակը, կ'ըսէ, երբ վարդապետ մը* [illegible]

[illegible]. ապա երկարօրէն այդ կէտերը կը պարզէ, յայտնելով ալ, թէ [illegible] (ԹՈՐ. Բ. 234—286)։ 4. Կը յանդիմանէ Ս. Հռիփսիմէի ոսկրներուն վաճառումը, և Լուսաւորչի Աջին փոխադրութիւնը, և կը հարցնէ [illegible] (ԹՈՐ. Բ. 287)։ Կաթողիկոսներու շատութեան վրայ ալ կը դիտէ, թէ [illegible]. և կը պնդէ թէ իբր կաթողիկոս [illegible] (ԹՈՐ. Բ. 288)։ 5. Կը ծանրանայ Հռոմի պապին ուղղուած գիրին վրայ. սաստիկ կը մեղադրէ Զաքարիա Վանեցին, [illegible] կոչելով, և կ՚առաջարկէ որ եթէ այն գիրը Զաքարիայի գործն է, և [illegible], պապին գրէ և խարդախութիւնը իվեր հանէ (ԹՈՐ. Բ. 290—292)։ Բոլոր յիշուած կէտերուն մասին ալ այսուհետեւ տարբեր վարուիլը կը պահանջէ, և ինչպէս սկիզբը յառաջ բերինք, այդ պայմանով միայն քեզ իբր կաթողիկոս [illegible], կ՚ըսէ, [illegible], այսինքն է, չենք ընդունիր։ Կեսարացիին գրութեան պարունակութենէն կը տեսնուի, որ նա նկատի կ՚առնէ Մելքիսեդեկի բովանդակ անցեալը, և հին ու նոր գործեր հաւասարաբար կը յանդիմանէ, և չամփոփուիր միայն վերջին ատեններ Ասպահանի մէջ ունեցած կացութեան վրայ։ Երեք կաթողիկոսներու յիշատակութիւնը և անոնց իրարմէ անկախ գործունէութիւնը, կը պատճառի Դաւիթի և Մելքիսեդեկի և Աւետիսի, որոնց երեքին ալ անունները յիշուած են նոյն գրութեան մէջ (ԹՈՐ. Բ. 288—289)։ Բնաւ չենք ենթադրեր թէ Մելքիսեդեկ օգտուած ըլլայ Կեսարացիին յանդիմանութիւններէն, վասնզի աւելի եւս սաստկացուց իր անկարգութիւնները, 1618՚ին Շահաբասի հրովարտակով Մայրաթոռը ձեռք անցընելէ ետքը (§ 1617)։ Կեսարացիին գրութիւնը շատ նշանակալից է ցուցնելու համար, թէ ինչ արհամարհական աչքով կը նայէին Կ-Պոլսոյ մէջ Մայրաթոռոյ կացութեան վրայ։

**ԿԱԹՈԼԻԿ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ**

**1626**. Սոյն գրութեան հոգին, մանաւանդ վերջին կէտին վրայ տրուած բացատրութիւնները, մեզի կ՚առաջնորդեն մտադրութիւն դարձնել այն խնդիրին վրայ, որ սկսած էր Կոստանդնուպոլսոյ մէջ երեւան գալ, և ուրիշ տեղեր ալ արձագանգ գտնել, և ազգին մէջ երկպառակութեանց պատճառ և կուսակցութեանց նշանաբան դառնալ։ Ասիկայ անանց կողմէ յայտնուած հռոմէական դաւանութեան մօտենալու միտումն էր։ Լատիններու արեւելքին վրայ ազդեցութիւն ունենալու ջանքերը նոր չէին, և Ռուբինեանց օրէն սկսելով այդ միտումը չեչտուեցաւ, Խաչակիրներով զօրացաւ, բայց անոնց տկարանալովը չդադրեցաւ. և երբոր քաղաքականապէս տիրապետելու դուռերը փակուեցան, լատինականութիւնը բոլոր ոյժը թափեց դաւանական միութեամբ համակիրներ և հետեւորդներ շատցնելու։ Այդ նպատակին կը հետեւէր ոչ միայն պապութիւնը, իբր հոգեւորական իշխանութիւն, այլեւ Իտալական հանրապետութիւններ իրենց տիրապետական և առեւտրական յարաբերութեանց համար, և անոնցմէ ալ աւելի Գաղղիոյ թագաւորութիւնը, որ իր ազգակիցներուն և կրօնակիցներուն վրայ պաշտպանութեան իրաւունք ստացած ըլլալով՝ զայն կը տարածէր կրօնակից բնիկներու վրայ ալ, և անով Թուրքիոյ ներքին գործերուն վրայ ալ ազդեցութիւն կ՚ունենար։ Այդ պաշտպանութենէ օգտուելու ձգտումն էր, որ բնիկներէ ալ մաս մը, մանաւանդ այնպիսիները որոց սիրտին մէջ ազգային եկեղեցւոյ զգացումը տկար էր, Լատիններու հետ յարաբերութեան կը մօտեցնէր, և բերնով թէ գործով, երեսանց թէ սրտանց, անոնց համակիրպելու կը հրապուրէր։ Գաղղիոյ դեսպաններն ալ շատ անգամ կրօնական քարոզիչի դեր կը վարէին։ Միեւնոյն ատեն Արեւելքի մէջ շատցած էին Լատին կրօնաւորներն զանազան միաբանութիւններէ, Փրանկիսկեան և Դոմինիկեան, Յիսուսեան և Թէաթինեան, որոնք մեծաւ եռանդեամբ հռոմէադաւանութիւն տարածելու կ՚աշխատէին, իրենց օգնական ունենալով քաղաքական պաշտպանութիւնը,

և իբրև փաստ գործածելով նիւթական նպաստներ, իսկ իբր հրապուրիչ միջոց առջև դնելով ուսմանց աւանդումը։ Արևելքի մէջ իրենց համար աւելի դիւրամատչելի և դիւրաշահելի տարրը կը ներկայանար Հայը, երկու մեծ պարագաներով։ Մէկը արտաքին էր, Հայուն աւելի նեղուած ու զրկուած և ցրուած վիճակը. և միւսը ներքին էր, Հայուն կրօնական զգացումներուն՝ թոյլատու և ներողամիտ սկզբանց վրայ հիմնուած ըլլալը, կամ աւելի բաց խօսելու համար, յաւիտենական փրկութեան համար հայադաւանութեան անհրաժեշտ պայման նկատուած չըլլալը, և ուրիշ քրիստոնեայ եկեղեցիներու մէջ ալ յաւիտենական փրկութեան հնարաւորութիւնը։ Չմոռնանք, որ Ունիթորներու վերջին մնացորդներէն զատ, Հայազգի անհատներ ալ Լատին միաբանութեանց անդամակցելով, և Լատին դպրատուններու աշակերտելով, հռոմէականութեան ջատագովներ եղած էին։ Այդ ամէն հանգամանքներ իրարու մօտ գալով, Հայերուն մէջ՝ թէպէտ մասնաւոր, բայց բաւական կարևոր հոսանք մը կը կազմէին հռոմէականութեան մտնելու, և լատինական օգնութեամբ զօրանալու, և եւրոպական նպաստներով բախտաւորուելու համար։ Մոռնալու չենք, վասնզի այդ հոսանքը ոչ երբեք զատուելով ինքնագլուխ և ինքնուրոյն մարմին մը ըլլալու գաղափարով գործի կը սկսէր, այլ իբրև միևնոյն Հայ ազգութեան մէջ կազմուած կուսակցութիւն մը՝ կը ջանար իւր տեսութիւնն ու կարծիքը զօրացնել, և ազգն ու ազգին կեդրոնը ու ազգային իշխանութիւնը այն կողմը հակեցնել, որով մի և միակ մարմնոյ կամ հասարակութեան մէջ երկու կարծիքներու կամ կուսակցութիւններու իրարու դէմ պայքարը կը մղուէր, այն ամէն միջոցներով և զէնքերով որով ընտանի կռիւներ տեղի կ՚ունենան։

ԿԱԹՈԼԻԿ ԱՌՈՒՄՆԵՐ

**1627**. Հռոմէականութեան հակամէտներու կողմը ժողովրդական կոչմամբ Ֆրէնկ կամ Ֆռանկ կը կոչուէր, և այդ անունը, որ Գաղղիացւոց յատուկ անունն էր, բոլոր Եւրոպացւոց անխտիր կը տարածուէր՝ Լատին կոչումին համանշանակ դառնալով։ Ասոր ալ պատճառը Գաղղիոյ դեսպանատան բոլոր հռոմէադաւաններու վրայ պաշտպանութիւն վարելն էր։ Հռոմէական եկեղեցին Կաթոլիկ (Catholique) յորջորջումը իբր յատուկ անուն իրեն սեփականած ըլլալով, նոյնը սկսաւ Ֆռանկ կոչումին տեղ գործածուիլ, և հետզհետէ ընդհանրացաւ և սովորական դարձաւ և ճիշդ այդ միջոցներուն սկսած է կաթոլիկ կոչման կիրառութիւնը։ Հռոմէադաւանք իրենց պաշտօնական և անպաշտօն գրութեանց մէջ կը սիրեն այդ անունը հայկական տառադարձութեան ձևով Կաթողիկեայ գրել, սակայն մենք պիտի չկարենանք իրենց հետևիլ, վասնզի Կաթողիկեայ բառը բոլոր քրիստոնեայ եկեղեցիներէն ընդունուած և գործածուած կոչում մըն է, յունականէ տառադարձութեամբ և ընդհանրական իմաստով, և նոյն իսկ Հայոց եկեղեցին ալ սոյն կոչումը իրեն համար կը գործածէ։ Ուստի շփոթութիւն չպատճառելու համար՝ կը նախադասենք կաթողիկեայ և կաթոլիկ կոչումները իրարմէ զատելով, առաջինը ընդհանուր քրիստոնէական իմաստով, և երկրորդը մասնաւոր հռոմէական առումով գործածել։ Քանի որ կոչումներու վրայ կը խօսինք, աւելցնենք թէ Հայ հռոմէականք ի զուր Ուղղափառ կոչումը իրենց կը սեփականեն, իբրև թէ կաթոլիկ կոչումին թարգմանութիւնն ըլլար, մինչ Ուղղափառ բառը յունական Օրթոտոքս բառին թարգմանութիւնն է, և Լատիններ իսկ այդ կոչումը Յոյներու սեփականած են և իրենց չեն պատշաճեցներ։ Իսկ Ուղղափառ հայկական բառն և կոչումը՝ հայկական անուն է, և հայադաւան եկեղեցւոյ սեփական է, և զայն լատինացնել բոլորովին սխալ է։ Անուններու մասին դիտողութիւնները փակելով պիտի կրկնենք, թէ Հայ հռոմէականութեան միտումը, որ ԺԷ դարուն սկիզբներէն նոր կերպարան մը սկսաւ առնալ, և հետզհետէ շեշտուեցաւ քաղաքական և նիւթական հրապոյրներու շնորհիւ, երբեք յատուկ մարմին կամ առանձին հասարակութիւն մը չէր և չեղաւ, այլ պաշտօնապէս միևնոյն Հայ ազգութեան և Հայ եկեղեցւոյ մէջ մնաց, և կարծիքի ու տեսութեան տարբերութենէն անդին չանցաւ։ Ասոր մէկ

*հաստատուն և անժխտելի փաստն է, որ այս ներքին վէճերը ուրիշ բան չէին, բայց եթէ իւր կողմը զօրացնելու ճիգեր։ Լատինասէր կամ լատինամիտ կամ լատինամոլ եղողներ, կամ ուրիշ կոչմամբ՝ Ֆռանկ կամ Կաթոլիկ բռնողներ, չէին ուզեր Հայ պատրիարքարանէ, Հայ ազգութենէ, Հայ եկեղեցիէ զատուելով առանձին ըլլալ, այլ միայն պատրիարքական աթոռին տիրանալով՝ զայն իրենց միտքին տանիլ, և ազգը իրենց ուղղութեան հետեւցնել կը ջանային։ Ըստ այսմ ցորչափ հայադաւան Հայ պատրիարքութենէ դուրս չէին, իրենք ալ պաշտօնապէս նոյնը կը մնային, և նոյն մարմնոյն մէջ կը շարունակէին մնալ։ Այն մեծ մրցումը զոր Յովհաննէս Խուլ և Գրիգոր Կեսարացի, այնչափ բուռն կերպով և շարունակեալ ելեւէջներով իրարու դէմ կը մղէին, երկու կարծիքներու կամ երկու ուղղութիւններու ընդհարումն էր, որուն սկզբնաւորութիւնը պատմեցինք, շարունակութիւնն ալ պիտի պատմենք։ Եւ դժբախտաբար երկու դար և աւելի անոր տխուր երեւոյթները առջեւ բերելու պիտի պարտաւորուինք։*

**ԱԹՈՌԻ ՋԳՏՈՒՄՆԵՐ**

**1628.** *Յովհաննէս Խուլ որ լատինամիտ ուղղութեան գլուխ էր կանգնած, 1600'ին, 1609'ին և 1613'ին պատրիարքական աթոռը գրաւած էր, և անգամ մըն ալ 1612'ին զայն թողած էր իւր աջակից և գործակից Վանեցիին. իսկ Կեսարացին ալ նոյնպէս երեք անգամ պատրիարքութեան տիրացած էր 1601'ին, 1611'ին և 1615'ին, այս զանազանութեամբ՝ որ անգամ մը ինը տարի կրցեր էր մնալ, մինչ իւր հակառակորդներուն իշխանութիւնները միշտ վաղանցուկ եղած էին։ Վերջին պահուն ալ ինքն էր նորէն աթոռին տէրը, ուսկից այնչափ ուժգնութեամբ կը յանդիմանէր Մելքիսեդեկ աթոռակից կաթողիկոսը (§ 1625), որ արտաքին զօրութեամբ բուռն գահակալ Դաւիթը զրկելով և լռեցնելով՝ բռնապետական կաթողիկոսութիւն վարած էր, և տակաւին վարելու կը հետապնդէր։ Ինքն Մելքիսեդեկ ալ իր յոյսը լատինամոլներու վրայ դրած, անոնց կողմը կը հակէր, և հեռուէն հեռու Խուլին և Վանեցիին հետ կ'ընկերշակէր, թէպէտ 1600'ին Խուլը եղած էր զինքն Կոստանդնուպոլսոյ աթոռէն տապալողը (§ 1596)։ Գրիգոր Դարանաղեցին, որուն ուղղութիւնը Խուլին ու Վանեցիին համաձայն չէր, սոսկ մէկտեղ անոնց միացած էր 1612'ին, զայրանալով Կեսարացիին կասկածոտ և բռնական ընթացքէն, և անկէ օգուտ ալ քաղած էր պատրիարքական հաստատութիւն վայելելին մասնակցելու, 1612'ին Անատօլու Ղարա-մանի վիճակներուն, ու 1613'ին Ռումէլիի վիճակներուն վրայ վերակացունշանակուելով (§ 1604)։ Սակայն վերջնապէս չկրցաւ լատինամոլ ուղղութեան հետ հաշտուիլ, ուստի Կեսարացիին վերջին զօրանալէն ետքը՝ բաժնուեցաւ Խուլին և Վանեցիին ընկերակցութենէն, և երկրորդ անգամ Կ-Պոլսէ մեկնեցաւ և Երուսաղէմ գնաց, ուխտի և հանդարտութեան նպատակով։ Այդ ուղեւորութեան թուական կը դրուի 1616 տարին (11 ԱՄՍ. 11), Աստուածաշունչի մը յիշատակարանին մէջ ալ (ԴՐՆ.) այդ երթին ակնարկելով կը գրէ, թէ զերծաւ ի յանձերծանելի վտանգէն և գնացաւ յԵրուսաղէմ։ Իսկ այդ վտանգները որոց համար կը գրէ, թէ ոչ գիր կարդան, և ոչ լեզու ճառել ոք կարէ, պատրիարքական աթոռին շուրջը անցնող ու նեցած պայքարներու վրայ իդէպ է իմանալ (§ 1604), որոնցմէ խորապէս զզուած կ'երեւայ։ Այլ թէ Երուսաղէմ ինչչափ մնաց որոշ չէ։ Երեք ամ շրջեցաք, կ'ըսէ, աստ և անդր, և ոչ գտաք տեղի հանգստեան, և տառապեալ եկաք այս տեղին, որ է, ըսել թէ 1619'ին Կոստանդնուպոլիս եկած է ուր և շարունակած է իւր Աստուածաշունչին ընդօրինակութիւնը։*

**ԱՌԱՋԻՆ ԹԵՄԱԿԱԼՆԵՐ**

**1629.** *Կարգաւոր պատմութեան բացակայութիւնը, և մանր յիշատակութիւններով պատմութիւն կազմելու հարկը, և սանոնց ալ ստէպ թերի և անյարիր ըլլալը, մութ կը թողուն այդ միջոցին պատրիարքական իշխանութիւնը վարողներուն շարքը, մինչ թէ ստվորական ցուցակները, որք Զամչեանի հետեւողութեամբ կազմուած են, այնւս չեն կրնար իբրեւ հաստատուն ընդունուիլ։ Կեսարացին որ 1615'ին նորէն պատրիարքու-*

*թիւնը ձեռք ձգած էր, նոյն պաշտօնին վրայ կը տեսնուի 1618'ին, ինչպէս յիշատակագիր մը կը գրէ, ի հայրապետութեան տեառն տէր Մելքիսեթի կաթողիկոսին, և վարդապետին իմոյ Գրիգոր տէր րաբունապետին Կեսարացւոյ* (ՏԱՇ. 778), *և յայտնի է թէ Կեսարացին կաթողիկոս չէ եղած։ Կեսարացիին պատրիարք ըլլալը չէր եղծուած վիճակներու բաժանմանց կերպը՝ որ Խուլին և Վանեցիին և Դարանաղեցիին դաշնակցութեան առթիւ կազմուեցաւ* (§ 1604)։ *Այդ մասին իբր հաստատութիւն պէտք է նկատել երկու իրարմէ անկախ յիշատակներ։ Առաջինն է Իւսկիւտարի Ս. Կարապետ եկեղեցւոյ շինութիւնը 1617'ին Զաքարիա Վանեցիի ձեռքով* (11 ԱՄՍ. 74), *որ կը ցուցնէ թէ նա ինքն էր տակաւին Ասիակողման առաջնորդը, ինչպէս կարգադրուած էր 1613'ին բաշխումին առթիւ* (§ 1604), *կեդրոն ունենալով Իւսկիւտարը, և ընդարձակուելով, մայրաքաղաքի մերձաւոր վիճակներու վրայ։ Ս. Կարապետի անունը անմիջապէս կը տանի Մշոյ Ս. Կարապետի յիշատակին, ինչպէս որ ցարդ ալ Վարդավառը նոյն եկեղեցւոյն տօնական օրն է՝ հետեւելով Գլակայ վանքին տօնին։ Միայն թէ Զաքարիա Վանեցի էր, և Վարագ նշանաւոր Ս. Կարապետ չկար, ինչպէս ոմանք կ'ենթադրեն, և Ս. Կարապետի անունը անկէ կը հետեւցնեն* (11 ԱՄՍ. 74)։ *Ընդհակառակն տեղական աւանդութիւն մը Գլակէն կ'առնէ անունին ծագումը, պատմելով թէ Մշեցի գործաւորներ Իւսկիւտարի մեծ մզկիթներէն մէկուն շինութեան կ'աշխատէին, և թէ մօտիկ աղօթատեղիի մը պէտքը զգալի ըլլալով, նոր եկեղեցիին շինութիւնը արտօնուեցաւ։ Միւս նշանակը Նիկոմիդիոյ մէջ պահուած գրչագիր հին Ճաշոցին մէջ 1618 փետրուար 26'ին աւելցած յիշատակն է, ի վերատեսչութեան յայսմ նահանգի Զքոյ վարդապետի, որ աշխարհաւ է Վաղարշապատցի, որ առէ Վան, իսկ Զքոյ՝ Զաքարիա Վանեցիի մօղովրդական կոչումն էր, որուն տակաւին Անատօլու քարտանդու վիճակներու վերակացու ըլլալը կը հաստատուի։ Նոյնպէս պիտի ըսենք Դարանաղեցիին մասին ալ, որ վերջին անգամ Ռումելիի վիճակներուն վերակացուն էր, և որ ընդհատ յիշատակներով* *չարունակ Ռոտոսդոյի առաջնորդ կը յիշուի, Ղալաթիա կը մնայ, որ Ռումելիի վիճակին մաս տրուած էր, և Ռոտոսթոյ գրտնուող տապանագիրն ալ զայն Նախարար Հօվէթաջարեան կը կոչէ* (11 ԱՄՍ. 7)։ *Ասոնցմէ կը քաղուի թէ Դարանաղեցին հակառակ իւր թափառած շրջագայութեանց, մինչեւ վերջ Ռումելիի կողմին առաջնորդը մնաց, Ռոտոսթոն իրեն աթոռանիստ ունենալով, և Ղալաթիան ալ իբր մայրաքաղաքի մէջ օթեւան։ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան սկիզբները բոլոր Օսմանեան կայսերութեան վիճակները, գոնէ մայրաքաղաքէն որոշ հեռաւորութեամբ շրջանակի մէջ, ուղղակի պատրիարքին վիճակը կը նկատուէին, և թեմական իրաւունքներ անոր կը պատկանէին, և վանքերու ու քաղաքներու մէջ գտնուող եպիսկոպոսներ ու վարդապետներ՝ թեմակալ չէին, այլ պարզապէս իբր տոմարախօս կամ պատուէրակ կը նկատուէին, և պատրիարքին իրաւունքը կը յարգէին* (§ 1509)։ *Առաջին անգամ Խուլ Յովհաննէսի, Վանեցի Զաքարիայի և Դարանաղեցի Գրիգորի միջեւ կատարուած բաշխումը, որ ուղղակի իրաւունքներու վայելքին համար էր, սկիզբ տուաւ առաջնորդական վիճակներու կամ թեմակալութեանց բաժանման, որ պատահական առիթէ ծագում առնելով՝ հաստատուն իրաւունքի փոխուեցաւ, և այս պիտի նկատուի իբր պատճառ, որ նոյն իսկ Կեսարացիին պատրիարքութեան ներքեւ, Դարանաղեցին ալ, Վանեցին ալ Կեսարացիին հետ հաշտ չըլլալով իսկ, կրնան պահել իրենց թեմական կամ առաջնորդական իրաւունքը։*

**1630.** *Երբոր Վանեցին ու Դարանաղեցին այդ կերպով առաջնակարգ դեր վարելէ հեռացան, պատրիարքական աթոռին ձգտումը, Խուլին և Կեսարացիին մէջ անհատական մրցում մնաց, և շարունակեց մինչեւ անոնց վերջին շունչը։ Կեսարացին միշտ իրեն պահեստի պաշտօն ունէր Կեսարիոյ առաջնորդութիւնը, ուր կը քաշուէր ամէն անգամ որ Կ-Պոլսէ հեռանալու կը ստիպուէր, սակայն Խուլին համար այդպիսի պահեստի պաշտօն մըն ալ ունեցած ըլլալ*

Կ-ՊՈԼՍՈՅ ՏՓՈԹՆԵՐ

բնաւ չյիշուիր, և ասոր ալ պատճառը, զի իւր նախնական գործունէութիւնք Կ-Պոլսէ սկսաւ, որուն բնիկն ալ էր; և հետևաբար տունտեղ և ազգական ալ ունէր, և անպաշտօն վիճակի մէջ ալ մայրաքաղաքմնալու յարմարութիւնները կը վայելէր։ Անգամ մը յիշուած է, թէ Կեսարացին, այնչափ մօտ էրէւլ էր ըշէտ Յօվհաննէսին, ժըն ըն ֆախտայեւլէր է Պրուսա (11 ԱՄՍ. 16), սակայն այսչափը բաւական չենք սեպեր, Խուլը Պրուսայի առաջնորդ կարծելու, և Պրուսան ալ անոր պահեստի պաշտօնատեղին եղած ըսելու։ Միշտ կցկտուր յիշատակներու վրայ հիմնուելով, Կեսարացին պատրիարքութիւնը պահած պիտի ըսենք մինչև 1619, որ կը համապատասխանէ Դարանաղեցիին երեք տարի թափառելէ ետքը 1619'ին Կ-Պոլիս դառնալուն (§ 1628), և 1620'ին Կ-Պոլսոյ մէջ գրուած աւետարանի մը մէջ՝ յառաջնորդութեան Յօվհաննէս վարդապետին ըսուած ըլլալուն (11 ԱՄՍ. 11)։ Դժբախտաբար իբր Կ-Պոլսոյ պատրիարքութեան պատմութիւն, ներհակընդդէմ պայքարներէ զատ բան մը չունինք գրելու, և ոչ ալ կրնանք ազգային գործերուն և գործունէութեան մասին որոշ տեղեկութիւններ տալ։ Իբրև նկատողութեան արժանի կէտ յիշատակենք երեք դաշնակիցներու մէջ տեղի ունեցած պառակտումը, և Դարանաղեցիին միւս երկուքին բարեկամութենէն զատուիլը։ Արդէն կանուխէն ալ, իւր խոստովանութեան համեմատ, թէ Աստուած գիտէ, որ ես բնաւ չէի ուզեր Խուլը (11 ԱՄՍ. 9), Դարանաղեցին անոր յատինամոլ ուղղութեան հաւնողը չէր, բայց Կեսարացիին կասկածոտ և բռնական ընթացքէն զայրանալով՝ յարած էր Խուլին կողմին, բայց այս անգամ կ'երևի թէ այլևս չկրցաւ տոկալ անոր ծայրայեղութեանց։ Կը գրէ թէ իւր երկու դաշնակիցները սկսան անիրաւել ուտել է դրամ ստացուածն և զինքն յայտնէ հրապարակաւ, և զօղ ստացան անարգելին (11 ԱՄՍ. 9), ուստի բաժնուեցաւ անոնց կողմէն, հարկաւ Կեսարացին ալ առիթէն օգտուեցաւ Դարանաղեցին չահելու, որով կրնար հակառակորդը տկարացնելով իւր կողմը զօրացնել։ Խուլին և Վանեցիին պահոց մէջ թուլութիւն մոցնելը, հռոմէականաց կողմէ անոնց պաշտօնապէս դաւանափոխ եղած ըլլալուն փաստ կը ցուցուի (11 ԱՄՍ. 9). սակայն այս հիմնական պատճառաբանութիւն մը չկրնար նկատուիլ։ Ոչ երբեք և ոչ ուրեք օրինազանցութիւնք կամ անսարքերութիւնք իբր կրօնափոխութեան փաստ ընդունուած է, կամ կրնայ ընդունուիլ։ Այս տեսակ օրինազանցներ շատ եղած են և շատ ալ կան ամէն կրօնքներու մէջ, բայց իրաւունք չենք տար զիրենք պաշտօնապէս կրօնափոխ կամ դաւանափոխ կարծելու։ Դավրիժեցին ալ Հայ վանականները կ'ամբաստանէ թէ զանց ըրած էին պահօք և ծոմաջաննէօք կենցաղավարել, և թէ է Ֆուլը տարէն ասդէք և զինէ և մօ անիրաւէր կ'ուտէին (ԴԱՎ. 220). բայց այս պատճառաւ դաւանափոխ չէին ըսուեր։ Խուլին ընթացքը եթէ պարզ օրինազանցութիւն ալ չըսենք, առ առաւելն կուսակցութիւն մըն էր, կամ թէ Հայ եկեղեցւոյ խստութիւնները թեթևցնելու կ'աշխատէր, բայց սաով Հայ եկեղեցիէ պաշտօնապէս բաժանուած, և ուրիշ եկեղեցւոյ ծոցը մտած չէր ըլլար, և ոչ ալ նոր պաշտօնական մարմին մը կազմողներ կ'ըլլային անոր հետևողները։ Ապա թէ ոչ Խուլը Հայոց պատրիարք ըլլալու ալ հետամուտ պէտք չէր ըլլար, և իրեն կողմնակիցներն ալ պատրիարքարանի գործերով զբաղելու չէին։ Այս վիճակի մէջ կը շարունակեն Կ-Պոլսոյ գործերը մինչև 1624, բայց մենք պէտք է նորէն Էջմիածինի գործերը պատմելու դառնանք, իրարու կապակցութիւնները պահելու համար։

**1631**. Մելքիսեդեկը թողուցինք իւր բռնակալ և հարկահան կաթողիկոսութեան (§ 1617), և իւր հարկահանջ պտոյտներուն մէջ, որոնք սակայն արդիւնաւոր չէին ըլլար,

ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԵՒ ՄՈՎՍԷՍ

վասնզի ամենեքին յանձրացան և որդէս լցին զխաքողէնան, և թէպէտ ինքն Մելքիսեդեկ և իրեն հետևորդները սաանց էրաանց կեղէնեաւ կողոպտէին զժողովուրդն, սակայն հաւաքածնին ոչ լինէր բաւական ծախուց էարեանց անգամ, իսկ պետական 100 թումանի տարեկանը ամյամէ ապառիկ մնալով հասած էր մինչև ութհարիւր թուման, որոնց վրայ կ'աւելնային փոխառութեանց պարտքերը,

[illegible] (ԴԱՎ. 171)։ Կը յիշուի թէ այդ վարանմանց միջոցին, Մելքիսեդեկ նամակ մը գրած է Գրիգոր ԺԵ պապին, 1622'ին, և անոր մահուան լուրը առնելուն երկրորդ նամակ մը փութացուցած է Ուրբանոս Ը պապին 1623'ին (ՏԱՃ. 111), որոնց մէջ անշուշտ պէտք եղած շողոքորթ լեզուն գործածած կ'ըլլայ, բայց նպատակը տագնապալից վիճակին նպաստ մը ակնկալելն եղած է։ Մելքիսեդեկ այդ կողմէ ալ յաջողութիւն մը չտեսնելով վերջին յուսահատութեան մէջ կ'որոշէ կաթողիկոսութեան հետ պարտքն ալ ուրիշի մը փոխանցել, և եթէ հարկ ըլլայ գաղտնի կերպով Պարսից տէրութենէն դուրս ելլելով ապահով տեղ ապաւինիլ, և Օսմանեան գաւառներուն մէջ կաթողիկոսութիւնը վարել և շահեցնել։ Այդ առթիւ իր միտքը կը դարձնէ Մովսէս Տաթեւացիին վրայ, ուսկից հարկաւ կը յուսար առձեռն գումար մըն ալ ստանալ իր միտքը գործադրելու համար։ Մովսէսի վրայ խօսեցանք, երբ Պօղոս Մոկացի վարդապետին հետ տուգանքի ենթարկուեցան Շահաբասէ (§ 1616)։ Իսկ անկէ ետքը յիշեցինք իր քարոզչական շրջագայութիւնները և եկեղեցաշէն ձեռնարկները և ժողովրդական հոգածութիւնները, միշտ Պօղոսի հետ համամիտ և գործակից, որ քան զինքն երիցագոյն էր. ինչպէս նաև պատմեցինք Սարգիս Պարոնտէրի կրօնաւորական ձեռնարկին ըրած օժանդակութիւնները (§ 1620)։ Երբոր Մելքիսեդեկ 1618'ին թագաւորական հրովարտակով և 100 թուման տուրքի պայմանով կաթողիկոսութիւնը ձեռք առաւ, Պօղոսի դէմ գործած բռնութիւնները (§ 1623) Մովսէսի դէմ ալ փորձեց, միայն թէ անոր չկրցաւ հրամայել իր վիճակէն դուրս ելլալ, զի Մովսէս Սիւնեցի էր էջմիածինի վիճակէն, և ոչ Մոկացի Աղթամարի վիճակէն։ Մովսէս աւելի կտրուկ միջոց մըն ալ գործածեց, ու [illegible] որ է գորգը, ծրարեց և Մելքիսեդեկին ղրկեց ըսելով. [illegible] Մելքիսեդեկ ամչցաւ, իր խորհրդակիցներն ալ զինքն համոզեցին, և գաւազանն ու միւս իրերը Մովսէսի դարձուց, [illegible]։ Այդ եղելութեան թուական կրնանք նշանակել 1620 տարին, երբ Պօղոս բռնադատեալ Մեծ-Անապատ էր քաշուած (§ 1623)։ Մելքիսեդեկ որչափ ալ պաշտօնապէս թոյլ տուաւ Մովսէսի իր քարոզութիւնները շարունակել, սակայն [illegible], այնպէս որ Մովսէս [illegible], միտքը դրաւ Կարին անցնիլ, որպէսզի կարենայ ազատօրէն իր հոգեւոր պաշտօնը կատարել (ԴԱՎ. 224)։ Երբ այդ դիտաւորութեամբ Երեւան եկաւ, Ամիրգունա լուր առաւ, և վարդապետը իրեն կանչեց, խօսեցաւ և աւելի եւս հաստատուեցաւ այն լաւ գաղափարին վրայ, զոր կազմած էր անոր և Պօղոսի գործունէութեան նկատմամբ, որ լոկ կրօնական էր և քաղաքական անտեղութիւն չէր ներկայեր։ Ամիրգունայի և Մովսէսի մէջ հաստատուած լաւ յարաբերութեանց պատճառներէն մէկն ալ եղած կ'ըլլայ՝ Ամիրգունայի քեռիին Աղապիի իր ամուսնոյն Երեւանեցի Յովհաննէսի հետ հաշտուիլը՝ Մովսէսի քարոզութեան ազդեցութեամբ, ինչ որ Ամիրգունա չէր կրցած ընել իր զօրաւոր միջամտութեամբ և իր կնոջ Հոռոմիի թախանձանօք (ԶԱՔ. Ա. 54)։ Ամիրգունա Մովսէսի վրայ հիանալով, զայն համոզեց և իր մօտը պահեց, Երեւանի մէջ Ս. Անանիայի եկեղեցին անոր յանձնեց, զոր Մովսէս շինեց և պայծառացուց, և ազգին համար նուիրական սրբավայր մը դարձուց, ուր խուռն կը խռնէր ժողովուրդը Մովսէսի քարոզութիւններէն և կատարած արարողութեանց կարգաւորութենէն հրապուրուած։ Այստեղ [illegible] Մովսէս [illegible], որ է ըսել մինչեւ 1623։

1632. Մովսէս Ս. Անանիայի վանքին կատարելապէս տուած էր Մեծ-Անապատի ձեւը (§ 1621), կրօնաւորական բարեկարգ միաբանութիւն ալ կազմած էր, որուն համբաւը տարածուեցաւ ի [illegible], ի [illegible], ի Վրաստան, ի Պարսկաստան, և յամենայն աշխարհաց [illegible], և նուէրներ ալ կու տային, ինչ որ Մելքիսեդեկի ծանր կու գար.

**ՄՈՎՍԷՍԻ ԳՈՐԾԵՐԸ**

[illegible], բայց Ամիրգունայի պաշտպանութեան պատճառավ [illegible]։ Մտածեց գոնէ Մովսէսի անունով ինքն ալ օգտուիլ, և անոր հետ միաւորհնէք կատարել, և արդիւնքը ինքը գանձել։ Այդ նպատակով յատուկ պատգամաւոր եպիսկոպոսներ ղրկեց Ս. Անանիայի վանքը, սակայն Մովսէս հրաժարեցաւ յայտնելով, թէ ինքն տակաւին եպիսկոպոս ալ չէ։ Մելքիսեդեկ փութաց դժուարութիւնը լուծել, անմիջապէս Ս. Անանիայի վանքը եկաւ, և աւագ երկուշաբթի օր, 1623 ապրիլ 7, որ Աւետման տօն ալ էր, Մովսէսը եպիսկոպոս ձեռնադրեց, և աւագ հինգշաբթի օր, ապրիլ 10'ին միասին միւռոն օրհնեցին, որ լաւ արդիւնաւոր եղաւ նուէրներու կողմէն, և Մելքիսեդեկի արծաթասիրութիւնը գոհացուց։ Ջուղայեցի վաճառականներ Սպահան դառնալով այնչափ բարձրացուցին Մովսէսի արժանիքը, որ ամէնքը փափաքեցան անգամ մը գոնէ զայն տեսնել, ուստի յատուկ պատգամաւորութեամբ զինքն Սպահան առաջնորդեցին, ուր մնաց [illegible], թէ քաղաքին և թէ շրջակայից մէջ եղող Հայ գաղթականութեանց այցելեց, քարոզեց, մխիթարեց, [illegible], դարձաւ Երեւան Ս. Անանիայի վանքը, իւր կրօնաւորական կեանքը շարունակել (ԴԱՎ. 227)։ Այդ պարագաներուն մէջն էր, այսինքն միւռոնօրհնէքի յաջողութենէն ետքը, և Սպահանի այցելութենէն առաջ, որ Մելքիսեդեկ կաթողիկոսութիւնն ալ Մովսէսի փոխանցելու գաղափարը յղացաւ, և անոր յայտարարեց թէ [illegible]։ Արդ [illegible], ես չեմ կրնար վճարել, վասն զի չեն տար, դուն կրնաս վճարել, որովհետեւ կրնաս հաւաքել, ուրեմն [illegible], դուն պաշտօնը վարէ ու պարտքը վճարէ, և [illegible] (ԴԱՎ. 171)։ Մելքիսեդեկ մինչեւ այն ատեն միշտ նենգութեամբ էր գործած, ուստի իւր առաջարկին անկեղծութեան հնար չէր վստահանալ, և ամէն տեսակ դարձուածներ միտքէ անցընել ներեալ էր։ Մովսէս ալ իրաւամբ կրնար կասկածով վերաբերուիլ իրեն եղած առաջարկութեան, թէպէտեւ գործն ալ բստ ինքեան ախորժելի պայմաններու մէջ չէր։ Ուստի Մովսէս [illegible] (ԴԱՎ. 172), և անկէ ետքը կատարած պիտի ըլլայ Սպահանի ուղեւորութիւնը, և հոն անցուցած 1623'ի վերջին և 1624'ի սկիզբի օրերուն տօնական միջոցը։

**ՍԱՀԱԿ ԳԱՌՆԵՑԻ**

1633. Մելքիսեդեկի կողմէ յայտնուած՝ կաթողիկոսութիւնը ուրիշի փոխանցելու գաղափարը, արթնցուց իրեն եղբօրորդւոյն Սահակ Գառնեցի եպիսկոպոսին ախորժակը, որ մինչեւ այն ատեն կաթողիկոսին աջ բազուկն էր եղած, և զգացուց անոր՝ որ քանի որ ես [illegible], պէտք չէ որ [illegible] քու կաթողիկոսութիւնդ։ Մելքիսեդեկ աւելի յարմար գտաւ այդ փոխանցումը, վասնզի թէ վճարմանց պատասխանատուութիւնը ուրիշի վրայ ծանրացուցած կ'ըլլար, և թէ այդ անձը իրեն հլու հպատակ մէկը կ'ըլլար։ Սահակի առաջարկին հաւանեցաւ, և անոր հետ մէկտեղ Էջմիածին եկաւ, և [illegible], այսինքն է 1623 նոյեմբեր 9'ին զայն կաթողիկոս օրհնեց։ Անկէ Երեւան եկաւ նոր կաթողիկոսով, զայն ժողովուրդին ներկայացուց, Ամիրգունա խանին ալ ճանչցուց, և անկէ խնդրեց որ Շահաբասին ալ ճանչցընէ, ինքն ալ յատկապէս գիր գրեց, թէ [illegible], և [illegible] իմ տեղս կարգեցի, որ կաթողիկոսութիւնը պիտի վարէ և տուրքն ալ պիտի վճարէ (ԴԱՎ. 172)։ Այստեղ Դավրիժեցին սիրող անկարգութիւնները բացատրած ատեն կը գրէ, թէ [illegible] կային (ԴԱՎ. 221)։ Կաթողիկոսներու չորս թիւը լրացնելու համար, Դաւիթի, Մելքիսեդեկի և Սահակի վրայ պէտք կ'ըլլայ Աւետիսն ալ աւելցնել, և այդ վերջինը մինչեւ 1623 կամ 1624 կենդանի ենթադրել։ Արդէն գրած ենք որ անհնար է Աւետիսի մահուան թուականը ստուգութեամբ ճշդել (§ 1618), և եթէ կենդանի ալ ըլլար, ոչինչ կ'արգելէր որ նոյնիսկ Աւետիսի Էջմիածին

գտնուած ատենը, Մելքիսեդեկ նոր կաթողիկոս մը աւելցնէր եղածներուն վրայ, թէպէտեւ Աւետիսին վերջի ատեններ Վրաստան քաշուած ըլլալուն խօսքն ալ կայ (11 ԱՄՍ. 69)։ Սահակի կաթողիկոսութեամբ մենք գահակալութեան կարգը փոփոխուած չենք կարծեր, որովհետեւ որչափ ալ Մելքիսեդեկ արքունի հրովարտակով Մայրաթոռոյ տէր կը նկատուէր, և իւր իրաւունքն ալ նոյնպէս արքունի հաստատութեամբ Սահակի վրայ կը փոխանցէր, սակայն կանոնական իրաւամբ և եկեղեցական օրէնքով Դաւիթ կը մնար միշտ բուն գահակալը, թէպէտեւ Ասպահան քաշուած և անձուկ սահմանի մէջ պաշտօն վարող, սակայն ոչ հրաժարած էր և ոչ ալ ազգային ժողովով գահընկէց եղած։ Հետեւաբար Մելքիսեդեկ ալ, Սահակ ալ, և նոյնիսկ Աւետիս ալ՝ եթէ տակաւին կենդանի էր, երեքն ալ պարզ աթոռակիցներ էին, իսկ գահակալ կը մնար միշտ Դաւիթ Դ Վաղարշապատեցին։ Սահակ կը պատրաստուէր անձամբ երթալ դուռն շահին, որպէսզի վերջնական և հաստատուն ըլլայ սեպհականացուցանելն ի վերայ ինքեան զկաթողիկոսութիւն, թէպէտեւ գործի ձեռնարկած էր, և շահի ղուլէրն, որոնք Մելքիսեդեկի հետեւորդներն էին (§ 1617), անցած էին Սահակին, և ընդ նմա շրջագայելն դրամ հաւաքելու համար (ԴԱՎ. 173)։ Այդ միջոցին Մովսէս ալ Ասպահանէ դառնալով (§ 1632) կայր պարտաւորութեամբ յերրորդ տան (ԴԱՎ. 227), այսինքն է Ս. Անանիայի վանքը։ Մելքիսեդեկ միշտ դրամ ձեռք ձգելու իղձէն մղուած, մտածեց Մովսէսէն ալ գումար մը կորզել, ուստի երեւեցոյց թուղթ մի որպէս զնամուսոյ, այսինքն է Մովսէսի անունով սուտ պարտամուրհակ մը կեղծեց, Ասպահանէ դարձին 100 թուման վճարելու իրեն, և պահանջին դատը Ամիրգունայի առջեւը հանեց։ Մովսէս բացէրաց ուրացաւ, պարտաթուղթին կեղծ ըլլալը յայտնեց, և այնպէս աներկեղծօրէն բացատրեց, որ խանն ալ և անոր իշխաններն ալ և ամէն մարդ իւր սիրտին մէջ Մովսէսի իրաւունք կու տար, միայն թէ օրինական վկայ չկար և դատը երկու ամիս կ'երկարէր առանց վերջանալու։ Ամբաստանողներն ալ ուզելով գործին մէջէն ելլալ, որոշեցին զայն մրանիրնէն նետել, և Սահակ դատարանի մէջ յայտնեց, թէ ինքն ալ Մելքիսեդեկ ալ թուղթին մասին ուղղակի բան մը չեն գիտեր, միայն թէ Համազասպ Հաւուցթառեցի՝ Երեւանի եպիսկոպոսն է զայն ներկայացուցած, և խաբէութեան հեղինակը նա եղած պիտի ըլլայ։ Ասով ուզեցին ոչ միայն իրենք ազատիլ, այլեւ Համազասպէ քէն լուծել, որ խորհուրդ և ճարտարութեան հակառակորդ մըն էր իրենց, և միաբանութեամբ դարձուցանէր զկողմն Մելքիսեդեկեան։ Համազասպի համար ինչ կարգադրութիւն եղաւ չէ յիշուած, բայց այդչափը բաւական եղաւ, և Ամիրգունա Մովսէսն արդարացուց, և ի նմին հանդիսի պատառեցին զթուղթն սուտ (ԴԱՎ. 228)։

**1634.** Մելքիսեդեկ կը յուսար որ կաթողիկոսութիւնը ուրիշի փոխանցելով ինքն ազատութիւն կը գտնէ և հանգստութիւն կը վայելէ։ Սակայն այնպէս չեղաւ։ Եթէ պետական տուրքը Սահակէն պիտի պահանջուէր, սակայն փոխատու պահանջողներ ուղղակի Մելքիսեդեկը գիտէին, և կը շարունակէին անկէ պահանջել իրենց առնելիքը։ Վերջին նեղութեան մէջ Մելքիսեդեկ ձեռք զարկաւ Էջմիածինի թանգարանին, և իբր վճարում կամ իբրեւ գրաւ սկսաւ պահանջատէրերուն յանձնել զսպասս օծեալ անօթոյն սրբոյ Էջմիածնի, մինչեւ իսկ Ս. Արիստակէսի և Ս. Ստեփանոսի աջերը ետ գրաւ այլազգէ Մահմէտականն, և նոր փոխառութեամբ հին փոխատուներ լռեցուց։ Սակայն այս ալ հիմնական ազատութեան կերպ մը չէր, և կսակած ալ կար որ մեծ այլ պարտատեարք եկեալ նեղէին, և հասած տեսաւ վերջնական դարմանին՝ այսինքն փախուստին ժամանակը։ Ուստի օր մը, 1624 տարուոյն սկիզբները, լոկ սպասաւոր մը մէկտեղ առնելով՝ Էջմիածինէ ելաւ երեկոյին մթնալուն մօտ, և Երեւանի ճանապան բռնեց, բայց ճանպուն կէսէն ուղղութիւնը փոխեց դէպի Սահաթի փոսը՝ որ է Երասխի միւս կողմը, և անկէ չիտակ գնաց ի կողմն Կարնոյ, հանդիպեցաւ Կաղզուան, և առանց ուրեք դադարելու Օսմանեան սահմանագլուխը անցաւ, և եկաւ Կարին։ Այն

ՄԵԼՔԻՍԵԴԵԿ Ի Կ-ՊՈԼԻՍ

տեղ ալ չատ չմնաց, այլ [illegible] [illegible], և առանց իր չուրջը աղմուկ ու համբաւ հանել տալու, արագ գնացքով հասաւ Կոստանդնուպոլիս (ԴԱՎ. 173)։ Այս հաշւով միեւնոյն 1624 տարին եղած է Մելքիսեդեկի Կոստանդնուպոլիս համնիլը (11 ԱՄՍ. 12), երբ պատրիարք կը գտնուէր Յովհաննէս Խուլը, և իրեն պաշտպան ու գործակից էր Զաքարիա Վանեցին, Ամիակողման վիճակներու վերակացուն (§ 1630)։ Յայտնի էր արդէն Մելքիսեդեկի և ասոնց մէջ կանխաւ հաստատուած մտերմութիւնը, և երեքին ալ հաւասարապէս լատինամոլ կուսակցութեան պատկանիլը։ Հետեւաբար Մելքիսեդեկի ներկայութեամբ աւելի զօրացաւ Խուլին կողմը, Մելքիսեդեկ ալ ոյժ առած կը խրոխտար [illegible] [illegible] [illegible], որովհետեւ չրջապատուած ալ էր բազում [illegible] [illegible] [illegible], և [illegible] [illegible] [illegible] [illegible] (11 ԱՄՍ. 12)։ Ասիկա վկայողը Դարանաղեցին է, որ Խուլին և Վանեցիին, հետեւաբար Մելքիսեդեկին ալ կողմնակից էր, բայց վերջիվերջոյ զզուանօք հեռացած էր անոնցմէ (§ 1630)։ Նոր համախմբեալ երեքները Մելքիսեդեկ և Յովհաննէս և Զաքարիա, համարձակ իրենց կիրքերուն ասպարէզ տուած, ոչ միայն յայտնի հրապարակաւ պահքը կը լուծէին, այլեւ պահեցողները անարգէին, և ոչ միայն հերձուածութիւնս կը տարածէին, այլեւ բազում անառակութիւնս կը գործէին։ Այդ ընթացքը պաշտպանելու յաւակնողներ, կը յայտարեն թէ ասոնց ըրածը [illegible], իմա՛ կաթոլիկ Հայերու՝ օրէնք ներեալ էր (11 ԱՄՍ. 12)։ Բայց չենք գիտեր թէ ինչ տարբերութիւն կայ ասոնց ըրածին, և Հայաստանի մէջ գտնուող ղեղծ եկեղեցականներուն ընթացքին մէջ, զորս Դաւրիժեցին կը մեղադրէ թէ [illegible] և [illegible] [illegible], և ի [illegible] [illegible] [illegible] և [illegible] և [illegible] [illegible] կը հաչակէին։ Սակայն այս ընելով [illegible] չէին ըրուեր (ԴԱՎ. 220), և նոյն իսկ հռոմէականութեան պաշտպանները Հայաստանի վանականներուն ալ [illegible] չեն ըրած։ Մեր նպատակը իւրաքանչիւրին կարծիքին դատախազ ըլլալ չէ, այլ միայն կը փափաքինք պատմական եղելութիւնները իրենց իսկութեան մէջ ներկայել, և հայրդաւան մտայնութիւնը հիմնապէս լուսաբանել։ Եղելութեանց կարգին դառնալով, երեքներուն ընթացքը այնչափ գէշ տպաւորութիւն գործեց, որ քահանայիւք և բազմամբք ժողովրդովք ցոյցեր կազմակերպուեցան անոնց դէմ, և Ներսէս Սեբաստացի վարդապետը, ճշմարտութեան իրաւանցն Աստուծոյ ջատագով և [illegible] անձ մը, որ վերջէն Սսոյ աթոռն ալ բարձրացաւ, զօրավիգն եղեւ զայրացած և գայթակղած ժողովուրդին, որ վերջապէս յաջողեցաւ ցրուել զնոր ժողովնոյն և հալածական առնել ի քաղաքէն [illegible] (11 ԱՄՍ. 12)։ Մելքիսեդեկի Կ-Պոլիս համնիլը 1624'ին տեղի ունեցած էր՝ աշունի ժամանակները, և գոնէ տարի մը այնտեղ մնացած պիտի ըսենք, զի ժամանակագրական պահանջներու համեմատ, 1625'ին վերջին ամիսներէն առաջ եղած պիտի չըլլայ Կոստանդնուպոլիսէ մեկնիլը։

**ԱՐՄԱՇԻ ՎԱՆՔԸ**

**1635**. Այստեղ ժամանակագրական կապակցութեամբ հարկ կը սեպենք պատմել Արմաշի վանքին հիմնարկութիւնը, որ մեծ կարեւորութիւն ունեցաւ առաջիկային պատմական եղելութեանց մէջ։ Արմաշու Չարխափան Ս. Աստուածածնին վանքը, կը գտնուի համանուն գիւղին կից, Նիկոմիդիայէ դէպ արեւելեան հիւսիս երկարող լեռնաշղթային վրայ, որ աւանդութեամբ առաջին դարերու հալածանքներու ատեն քրիստոնեաներու ապաստարանն է եղած։ Այժմեան Հայ վանքը հաւանաբար չինուած է յունական յանդած վանքի կամ եկեղեցիի մը տեղին վրայ։ Թէպէտ վաւերական արձանագրութիւն կամ պատմութիւն չէ մնացած՝ հիմնարկութեան տարին և պարագաները ճշդող, սակայն աներկբայ է թէ հիմնարկութիւնը եղած է ԺԷ դարուն առաջին տարիներու մէջ։ Աւանդական յիշատակներ կը հաւաստեն թէ Ճէլալիներու երեսէն փախած գաղթականները բազմացուցած են այդ կողմերու հայաբնակութիւնը, և մենք գիտենք թէ չուրջ 1600'ին տեղի ունեցաւ Ճէլալիներու բռնութեանց ընդարձակուիլը (§ 1593), և վերջացաւ 1608'ին (§ 1595)։ Վանք մը հաստատելու գաղափարը ունեցած է էջմիածինի նուիրակ Թադէոս եպիսկոպոս, ո-

րուն աւանդութիւնը տեսիլքներ և յայտնութիւններ ալ կը վերագրէ, և շատ մը դժուարութիւններ ալ կը պատմուին՝ գլխաւորապէս վանաշինութեան պետական արտօնութիւնը ձեռք ձգելու համար, զոր վերջապէս յաջողած է ստանալ Թադէոս՝ Նիկոմիդիոյ մէջ, Պարսից դէմ պատերազմի գացող մեծ եպարքոսէ մը։ Այս պարագան ալ ձէլալիներու ընկճուելէն ետքը տեղի ունենալուն կը յարմարի, երբ 1611 գարունին, մեծ եպարքոս Գույուճու Մուրատ փաշան ճամբայ կ'ելլէր իբր Պարսից դէմ պատերազմին սպարապետ (§ 1605)։ Հաւանական է որ Թադէոս եպիսկոպոս կանուխէն շինութեան ձեռնարկած ըլլայ, սակայն հիմնարկէքի պաշտօնական թուականը յարմար է դնել 1611'ին, պետական արտօնութիւնը ստացած թուականին։ Աւոր շատ յարմար կուգայ Դարանաղեցիին յիշատակարանն ալ, որ երբ 1612'ին պատրիարքական հասոյթներուն բաշխուելէն ետքը, իրեն բաժին ինկած Անատօլու ֆարաթանտայէն այցելութեան կ'ելլայ, Արմաշ ալ կը հանդիպի, և իւր Աստուածաշունչէն հինգ տէրէբօղի կը գրէ Արմաշու ժամատունն, ի դուռն Նորաշէն վանք կոչեցեալն՝ հոգւոյ Արմաշու Նորաշէնէցն (ԴՐՆ.)։ Ասկէ կը հետևի թէ Արմաշ գիւղ նոյն միջոցին Նորաշէն մաս մըն ալ ունեցեր է, և անոր հուպ Նորաշէն վանք մը հիմնուեր է։ Այդ պարագան ալ աւանդութեամբ կը հաստատուի, թէ գիւղին մէջ Վարէ թէող հնագոյն մաս մը եղեր է, և ետքէն Վէրէ թէող մաս մը աւելցեր է, և այս Վերի գիւղին հուպ կը գտնուի վանքը։ Վանքին ալ բաւական կազմակերպեալ վիճակ մը ունեցած ըլլալուն նշան է, որ Դարանաղեցին տակաւին Արմաշ չեկած, իւր հետևորդներէն Առաջակեցի Վահրամը յղած է Արմաշու ի Նոր թէողն, և իւր Աստուածաշունչին ընդօրինակութեանը համար, այն տեղէն օրինակ մը բերել տուած է իւր գտնուած տեղը, հաւանաբար Նիկոմիդիա քաղաքը։ Դժբախտաբար ասկէ աւելի պատմական յիշատակ չունինք Արմաշու վանքին նախնական ժամանակին վրայ, թէ ինչ կարգով և կանոնով կազմուած էր վանականութիւնը, թէ ինչչափ անդամներ ունէր միաբանութիւնը, և թէ Մեծ-Անապատին կազմակերպութիւնն է՞ր արդեօք (§ 1621) Արմաշի մէջ ալ հաստատուածը։ Միայն դիտելու է, որ թէպէտ Հայ վանքեր շատ են Փոքր-Հայոց մէջ, և շատ շատ են Մեծ Հայոց մէջ, սակայն ցանցառ են Փոքր-Ասիոյ հայ գաղթականութեանց մէջ, և Մէրզիֆունի և Անկիւրիոյ Զարխափան Ս. Աստուածածնի վանքերէն ետքը, որոնք հնագոյն են, միայն Արմաշի Զարխափանն է՝ որ վերջին դարերուն մէջ հիմնուած է, և Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան մերձաւորագոյն վանքն եղած է։

**ԹԱԴԷՈՍ ՀԻՄՆԱԴԻՐԸ**

**1636**. Արմաշու հիմնադիր Թադէոս եպիսկոպոսին վրայ խօսելով, մինչեւ հիմայ այս անուն եպիսկոպոսի մը հանդիպած չենք ժամանակակից պատմութեանց և յիշատակարանաց մէջ, որ մերձեցնելով ծանօթութիւն մը քաղէինք անոր ծագումին և նախընթացին և գործունէութեան վրայ։ Տեղական աւանդութիւնը զայն Նուրէլ կոչումով կը ճանչնայ, և երկու շրջան կը վերագրէ, մէկը Բիւթանիոյ, և միւսը Ղրիմու շրջաններուն մէջ, Արմաշի մէջ հաստատուելէն առաջ։ Նորա արժանիքին նկատմամբ ալ, ինքնըստինքեան նպաստաւոր փաստ մըն է վանաշինութեան գաղափարն ու ձեռնարկը, թէ իւր հոգևորական զգացմանց և թէ ժողովուրդի հոգածութեան տեսակէտէն։ Նմանապէս բաւական կարողութեան ալ նշան է, դժուարին գործ մը գլուխ հանելը, և նոյնիսկ պետական արտօնութիւնն ալ իւր նախաձեռնութեամբ ստանալը, երբ պատրիարքները աթոռի պայքարներով միայն կը զբաղէին (§ 1604)։ Արմաշի մէջ տիրած գաղափարը իրեն նպաստաւոր է և ցարդ ալ նոյնպէս կը մնայ։ Միայն վերջին օրեր Դարանաղեցիին Երուսաղէմի մէջ պահուած ձեռագիրէն հատուած մը հաղորդուեցաւ ինձի, ուր Արմաշու Թադէոս եպիսկոպոսը շատ տգեղ գոյներով նկարագրուած է, և կոչուած է Թադէոս անուն Բերահաւոր, ի դասնէն երէցանց եղեալ եպիսկոպոս, որ կայր ի Նորաշէն վանս Արմաշու, որ ոչ օրէնս հաց ուտէր, և ոչ յԱստուծոյ ահ և երկիւղ կը կրէր, և ոչ ի մարդոյ ամօթ, ոչ գառն գիտէր և ոչ ատէր ի գինեմոլութենէն, ոչ մեղաց բնաւ զզջումն ունէր, այլ

անյագութեամբ գործէր զամենայն չարիս, և եր թուլացեաց և ցրուեր, և այնպէս անզղջութեամբ մեռաւ։ Դարանաղեցիին այդ նկարագիրը, եթէ ստոյգ լինէր, հարկ կ'ըլլար Թադէոսը աշխարհի չարագոյն մարդը նկատել. սակայն մենք քիչ մը կասկածով պիտի վերաբերուինք Դարանաղեցիին վկայութեան։ Նոյն ձեռագիրին մէջ Դարանաղեցին նախապէս կը յիշէ, թէ ինքն էր ի Նորաշէն քաղաքն Արմաշու, որ յանուն սուրբ Աստուածածնին էր, և կ'աւելցնէ ևս, ի մեր յետոյերոյն։ Արդ Դարանաղեցին, ինչպէս Աստուածաշունչին յիշատակարանէն կը քաղուի, մէկ անգամ միայն, և այն ալ կարճ ժամանակաւ գտնուած էր Արմաշու Նորաշէն վանքը, ուստի կը հետեւի թէ վանքը իր երթալէն առաջ շինուած էր, և թէ վանքին շինութեան առեն ինքը հոն չէր։ Ուստի անհիմն պարծենկոտութիւնէ զատ բան մը չէ՝ ի մեր յետոյերոյն գրելը, որուն պատճառ եղած է անշուշտ, այն կողմերուն վերակացուն ըլլալը, և վանքին իր իշխանութեան սահմանին մէջ գտնուիլը։ Ամենայն հաւանականութեամբ Թադէոս, որ վանքը հիմնարկելու համար այնչափ աշխատութիւն թափած էր, ընդդիմացած պիտի ըլլայ նոր վերակացուին միջամտութեան, և վանքը Կեսարացիին իշխանութեան առեն շինուած ըլլալով, Թադէոս անոր բարեկամ՝ և Խուլին և անոր կողմնակիցներուն հակառակորդ եղած պիտի ըլլայ։ Ըստ այսմ յայտնի կ'ըլլայ թէ Դարանաղեցիին զայրոյթը Թադէոսը հզօրակեցնել չկրնալուն հետեւանքն է, և նկատողութեան արժանի է, որ միայն Հինգ տերեւ ճառողն գրելու չափ կրցած է Արմաշ մնալ։ Թադէոսի մասին գրուած մեղադրանքներն ալ ընդհանուր խօսքեր են և անհաւատալի ըլլալու չափ չափազանցութիւններ, և ժամանակին սովորական դարձած՝ իրարու դէմ խօսուած ու գրուած նախատինքներ։ Իբրև դրական եղելութիւն կը գտնենք միայն Թադէոսի չուշտակ վարդապետ և եպիսկոպոս եղած ըլլալը, որ յանցանք մը չէ, և մէյ մըն ալ Աբրահամ Տիվրիկցի անուն աշխարհական անձ մը, որ երեսուն տարի կեղծ քահանայութիւն է ըրեր, աբեղայ և քահանայ ձեռնադրած ըլլալը, զոր Դարանաղեցին իր իշխանութեան առեն ուզեր է արգելել, բայց Եսալովայի գիւղացիք զայն պահեր են՝ իրեն յաջողակութեան և օգտակարութեան համար, Խուլին և Զաքոյին հրամանագրով, և իր հրամանին չեն անսացեր։ Ասոր ալ պատճառ, հարկաւ տարիէ մը Սախակողման վերակացութիւնը թողուլն է, որովհետեւ Զաքոյ կամ Զաքարիա Վանեցին առանձնեց անոր բաժինը, և ինքն Ռումէլիի կողմը քաշուեցաւ։ Մենք չենք ուզեր Թադէոսը իբրև սրբութեան տիպար մը ներկայել, բայց և ոչ կրնանք զայն դատել Դարանաղեցիին տեսութեամբ, որ Թադէոսի չափ ալ արդիւնք մը չունի, և ընդօրինակող և հասարակ գրագիրէ բարձր անձ մը եղած չէ։

**1637.** Կոստանդնուպոլսոյ պատրիարքարանին դառնալով, պէտք է յիշենք թէ

**Կ-ՊՈԼՍՈՅ ԱՆՑՈՒԴԱՐՁԸ**

Մելքիսեդեկի և Յովհաննէսի և Զաքարիայի վարած կեանքը ընդհանուր զայրոյթ պատճառած էր ժողովուրդին մէջ (§ 1634), և կարի յարմար կուգայ այդ միջոցին պատշաճեցնել Խուլին մէկ արկածը։ Կ-Պոլսոյ քահանաներ Ճնորհօք իմն կը տանին զայն Նաւլըքարուի կողմը գտնուող Աւետաբերոց գինետունը, և Եէնիչէրիներու գլխաւորին լուր տալով իրենք խոյս կուտան, մինչ Եէնիչէրիներ եկեղեցական մը գինետունի մէջ տեսնելով, զհարբողեալն ամենն բռածեծ, թէպէտ այն կ'աղաղակէր թէ տեղեակ չէմ տեղւոյս։ Որչափ ալ եղածը խաղ մըն էր, սակայն Քէօմիւրճեան, որ միջադէպը կը պատմէ, կը յայտնէ թէ Խուլ Յովհաննէս հարբողեալն տեղոյն, այսինքն է Կոստանդնուպոլսեցի, ծանօթ էր իբր ի բարս չամբշական ասլրող մը (ՁԵԼ. 6)։ Ասանց այս դիտողութեան ալ, քահանայից մատնած խաղը, նոյնիսկ Խուլին կենցաղէն դրդուած ըլլալով, կը լուսաբանէ անոր ընթացքը։ Այդ ընդհանուր գրգռութեան մէջ Մելքիսեդեկ կը յուսահատի Կոստանդնուպոլսոյ մէջ յաջողութիւն գտնել, և տեսնելով որ ամեն ես ու ընկալեալ զնա ժողովրդոց և հարբողեալ ժամանակին (ԴԱՎ. 174), ուր արդէն լաւ անուն մը չէր թողած իր պատրիարքութեան օրէն (§ 1581), կը մտածէ այլուր փնտռել իր բախտը, և կ'ուղեւորի

դէպի Լեհաստան, յուսալով օգտուիլ Իլվո-վի Հայ գաղթականութեան միամտութենէն և հարստութենէն։ Մելքիսեդեկի մեկնիլը Հայոց 1065'ին կը դրուի, բայց որովհետեւ ամանորը 1625 հոկտեմբեր 16'ին կ'իյնար, կրնանք նոյն 1625 տարւոյ վերջերը դնել անոր Կոստանդնուպոլիսէ մեկնիլը։ Ճիշդ այդ միջոցին Գրիգոր Կեսարացին նորէն Կ-Պոլիս կը դառնար, Մինաս Կարնեցի և Յովհաննէս Երզնկացի եպիսկոպոսներու ընկերակցութեամբ, առիթէն օգտուելով Խուլը տապալելու համար (11 ԱՄՍ. 13)։ Գուցէ անոր հասնիլն ալ Մելքիսեդեկի հեռանալուն պատճառներէն մէկն էր։ Խուլը իւր իսկ գրած մէկ յիշատակարանին մէջ, ինքզինքը պատրիարք այսմ Նահանգիս կը կոչէ 1625 ապրիլին (11 ԱՄՍ. 12), սակայն 1626'ին կամ 1625'ին վերջերը՝ հայկական ամանորին հաշուով, Կեսարացին արդէն Խուլը փախուցեալ էր ի Պրուսա, և ինքն տիրեալ էր պատրիարքարանին բռնութեամբ (11 ԱՄՍ. 16), ինչ որ կ'ակնարկէ ուրիշ տեղ ըսուածին, թէ քահանայիւք և բազմամբոխ ժողովրդովք յաջողած էին շրջել զտոր ժողով Մելքիսեդեկի և Յովհաննէսի և Զաքարիայի, և հալածական առնել ի քաղաքէն դժէ։ Զի Մելքիսեդեկ գացած էր ի Սկիւթացւոց աշխարհն որ այժմ Լեհ ասի (11 ԱՄՍ. 12), և որ ուրիշ տեղ յաշխարհն Ռուսաց է ըսուած (ԹՈՐ. Բ. 478)։ Յովհաննէս փախած էր ի Պրուսա, և Զաքարիա իւր Ասիակողման բաժինը քաշուած։

**1638.** Երբոր Մելքիսեդեկ Իլվով հասաւ, իրեն արծաթասիրութեան բարեպատեհ առիթ մը գտաւ, եպիսկոպոսական աթոռին պարապութիւնը և նոր ձեռնադրութեան պատեհը։

ՄԵԼՔԻՍԵԴԵԿ ԵՒ ՆԻԿՈԼ

Խաչատուր եպիսկոպոսէ ետքը՝ որ 1467'ին Արիստակէս աթոռակալէ ձեռնադրուած էր (§ 1502), Լեհաստանի եպիսկոպոսներու շարայարութիւնը կը կազմեն, Ստեփանոս, Գալուստ, Գրիգոր Վարագցի, Պարսամ Տրապիզոնցի, Յովհաննէս-Գալուստ, և Կարապետ-Գաբրիէլ (ԿԱՄ. 5.), և վերջապէս Մեսրով Կաֆացի արքեպիսկոպոս (ԲՈՆ. 154), որ վախճանած էր 1623'ին (ԲՈՆ. 21), և աթոռը պարապ մնացած էր մինչեւ Մելքիսեդեկի հասնիլը, 1626'ին սկիզբները։ Ըստ այսմ աթոռի պարապութիւնը ամս ինչ տեւած կ'ըլլար և ոչ ամիսս ինչ (ԲՈՆ. 21)։ Իսկ Ղազար Բաբերդցի վարդապետ մը, որ 1624'ին ինքզինքը առաջնորդ սուրբ ուխտիս և Օլախաց երկրիս (ՏԱՇ. 718), և ուրիշ տեղ ալ Ոլախաց երկրին եպիսկոպոս կ'անուանէ (ՏԱՇ. 708), միայն Վալաքիոյ մասին առաջնորդն եղած է։ Իլվովի գլխաւոր աթոռին պարապութեան պատճառն եղած է ընտրութեան մասին երկպառակութիւնը, վասնզի ոչ միայն եկեղեցական կանոններով, այլեւ Լեհ թագաւորներէ ճանչցուած օրէնքներով, ժողովուրդք և եկեղեցականք Հայոց Իլովայ, ունէին իրաւունս անկախ ընտրութեանց (ԲՈՆ. 154)։ Մելքիսեդեկ խնդիրը լուծելու համար իբր միակ փաստ կը ճանչնար իրեն գալիք գումարը, ուստի մէկ կողմ թողուց ժողովուրդին ընտրելինները, և տեսանելով շփոթութիւն ամենայն զպատրաստ ուխտային, նաեւ զանփութութիւն եւս յոլովից ուխտից, ինչպէս Դավրիժեցին կը գրէ (ԴԱՎ. 280), կամ թէ կաշառեալ բազում ոսկւով, ինչպէս Լատին պատմիչն ալ կը խոստովանի (ԲԱՆ. 154), առաջուընէ հարկեր յիշեալն զատուցեալ կարգեցին իբր գին (ԿԱՄ. 203), և առանց ուրեք յայտնելու, և ժողովուրդէն գաղտնի, օր մը կ'առանձնանայ մերձակայ Հաճկատար Ս. Խաչ վանքը (ԲԺՇ. 102), և դռնփակ եկեղեցւոյ մէջ եպիսկոպոս կ'օծէ Նիկողոս Թորոսեան, կամ տեղական յորջորջմամբ Նիկոլ Թորոսովիչ 22 տարեկան աբեղայն, բնիկ Իլվովցի Յակոբ Թորոսովիչ անուն մեծահարուստ վաճառականի մը որդին (ԿԱՄ. 143), որ ոչ ուսեալ էր գրել, և ոչ արժանաւոր այնմ աստիճանի, ինչպէս կը վկայէ լատին պատմիչն ալ (ԲՈՆ, 154)։ Հազիւ թէ կը լսուի Մելքիսեդեկի գործը, ժողովուրդը կը յուզուի, այնպէս որ փոքր մի եւս և զէն առնոյր, և ի մասունս մասունս կտրէր զկաթողիկոսն և զյետնորդսն ի նմանէ (ԲՈՆ. 21), իսկ Մելքիսեդեկ խորամանկութեամբ (ԲՈՆ. 154) կը յայտարարէր թէ ուրիշ վիճակի համար ձեռնադրած է, և Նիկոլն ալ մէկդի առնելով կը փութար Իլվովէ մեկնիլ Կամենից երթալու, անկէ ալ ի հայրենիս իւր դառնալու յայտարարութեամբ։ Երբ Եազլովից կը հասնին, Մել-

քիսեդեկ կ'առաջարկէ Նիկոլի Իլվով դառնալ (ԲՈՆ. 21), իսկ սա կը ստիպէ և զինքն չընդունողներուն դէմ բանադրանքի և նզովքի կոնդակ մը կ'առնէ Մելքիսեդեկէն, և անով զօրացած կը դառնայ Իլվով։ Մերձաւոր կիրակէին զայն հանդիսապէս կը հրապարակէ, իսկ ժողովուրդը թէպէտ և տրտմեցաւ մեծաւ սգով, բայց վճարեցաւ պարտքն և ողորմութեան եղեւ լուեցին (ԴԱՎ. 281), պատկառելով կաթողիկոսին անէծքէն։ Այս կերպով Նիկոլ աթոռը գրաւեց, և ժողովուրդը թէպէտ յանձնայր, բայց հպատակեցաւ, և երբ երկու տարի առանց վրդովման անցաւ, և Նիկոլ իր իշխանութեան մէջ հաստատուեցաւ (ԲՈՆ. 21)։

**1639.** Իսկ Մելքիսեդեկ Եազլովիցէ, ուր Նիկոլէն բաժնուեցաւ, եկաւ Կամենից,

**ՄԵԼՔԻՍԵԴԵԿԻ ՄԱՀԸ**

և չենք գիտեր թէ ուր երթալ կը մտածէր, զի Էջմիածին չէր կրնար դառնալ, Կ-Պոլիս ալ յաջողութիւն չէր գտած, մանաւանդ որ Կեսարացին ալ արդէն պատրիարքական աթոռը գրաւած էր։ Յիշատակարանի մը մէջ կ'ըսուի թէ եկած է ի Լեհաստան՝ կամելով գնալ ի Հռոմ (ՏԱՂ. 111), սակայն ուրիշ կողմէ մը չհաստատուիր, և յիշատակագիրն ալ հեղինակաւոր մէկ մը չներկայանար։ Ուստի կ'երեւի թէ ինքն ալ որոշում մը չէր տուած, զի զնէ տեղ ինչ առաւել հեռանալոյ աղուհացից օրերուն մէջ, և քիչ օր ետքը մեռաւ Կամենից քաղաքը, 1626'ին, ի տօնի յարութեան Ղազարու, որ է ընկ ապրիլ 1'ին, և այնտեղ թաղուեցաւ, (ԴԱՎ. 283), ուր կը տեսնուի տակաւին իր գերեզմանը Աւետման եկեղեցւոյն մէջ, փորագրեալ պատկերն ալ պատին վրայ (ԲԺՇ. 152)։ Յիշատակարանի մը մէջ 1628'ին ի հայրապետութեան տեառն տէր Մելքիսեթ կաթողիկոսին կարդացուած ըլլալը (ՏԱՇ. 708), պարզապէս հայկական թուականին մէջ Ե և Է թուատառերու շփոթութեան հետեւանք է, զի Մելքիսեդեկի մահուան թուականը ստուգուած է։ Մելքիսեդեկի արկածախնդիր, փառամոլ, արծաթասէր և նենգամիտ կեանքը փակելով՝ գնահատումի կամ գովեստի արժանաւոր ոչ մի կէտ չենք գտներ առաջ բերելու համար։ Իր աթոռակցութեան կոչուած օրէն 33 տարի գործի վրայ գտնուեցաւ, բայց երբեք օգտակար ծառայութիւն մը չկատարեց, որուն ակընկալութեամբ Դաւիթ զինքն բարձրացուց, կամ թէ ինքն ինքզինքը բարձրացնել ստիպեց (§ 1581)։ Բոլոր նպատակն եղաւ Դաւիթը և ուրիշ աթոռակիցները անչքացնելով ինքն տիրանալ իշխանութեան. Դաւիթը որչափ կրնար հեռու և անգործ պահեց, Սրապիոնը նենգութեամբ հեռացուց, Աւետիսը անկարեւոր դիրքի մէջ թողուց, բայց ինքն ալ իրեն ուրիշ վայելք չպատրաստեց, բայց եթէ լոյծ և ընդարձակ կենօք զուարճանալու դիւրութիւնը (ԴԱՎ. 153)։ Բաւական նեղութիւններ ալ կրեց, բռնծեծ հարուածներ, չղթայակապ բանտարկութիւններ, կալանաւոր թափառումներ, մինչեւ իսկ իր միսը ուտելու բանադատուեցաւ (§ 1608), սակայն այս ամէնը, որ խոստովանողական արժանիքի պատճառներ կրնային ըլլալ, ոչ մի փառաւորութիւն չբերին իրեն, զի ոչ հաւատքի համար կրեց, և ոչ առաքինական հոգւով տարաւ, այլ պարզապէս իր արծաթասէր և նենգամիտ գործերուն հետեւանքները կրեց։ Դաւանութեան կողմէն ալ ակարամիտ թուլութենէ և շահախնդիր շողոքորթութենէ տարբեր երեւոյթ մը չենք տեսներ իր վրայ։ Իրեն վերագրուած գիրերուն և իր անունով Հռոմի պապերուն ուղղուած նամակներուն վրայ հիմնական վերապահութիւններ յայտնեցինք իր կարգին (§ 1601), և անոնց պարունակութեանց չափազանցութիւնը դիտել տուինք, որ գրածին լուրջ արժէքը կը կտրէ։ Բայց եթէ իբր իսկապէս իւրն ալ ընդունինք, չենք գիտեր ինչ ոյժ կրնայ վաստկիլ հռոմէականներուն պաշտպանած խնդիրը, անուղիղ անձի մը վկայութեամբ։ Նա ոչ միայն իր անհատական արժէքով ոչ մի ոյժ չի կրնար ունենալ, այլեւ պաշտօնական տեսակէտէն ոչ մի հեղինակութիւն չունի, քանի որ երբեք գահակալ կաթողիկոս և եկեղեցւոյ պաշտօնապէս պետը չէ եղած, և Դաւիթը նենգութեամբ հեռացնելով, ու արքունի հրովարտակով զօրանալով ալ, երբեք գահակալ կաթողիկոս չդառնար։ Ուստի և Հայաստանեայց եկեղեցւոյ բուն հայրապետներուն շարքին չմտներ իր անունը, հակառակ սովորական ցուցակներու մէջ ան-

ցած ըլլալուն (ԺԱՄ・637), գահակալի և աթոռակիցի տարբերութեան միտք դարձուած չըլլալուն պատճառով։

**1640**. Կոստանդնուպոլսոյ մէջ, Կեսարացիին նորէն աթոռին տիրանալուն առենները Գալաթ թաղին եկեղեցիին խնդիրը կը յուզուէր։ Այդ թաղին պատկանող Կէօմիւկի Ս. Նիկողայոս եկեղեցին, որ առաջ լատին եկեղեցի եղած կ՚ըսուի (11 ԱՄՍ・472), և յետոյ Կաֆացի Հայերուն անցած, և վերջերս թաղին ազգային եկեղեցին էր եղած, կառավարութեան կողմէ գրաւուելով մզկիթի վերածուած էր, և այսօր ալ Բէֆէլի ճամի անունով կը կոչուի։ Եղելութիւնը մեծապէս յուզած էր Հայերը, բայց թէ Գրիգոր Կեսարացին և թէ Յովհաննէս Խուլ, հաւանաբար Պրուսայէ դարձած (§ 1547), մին պատրիարք և միւսը մրցակից, համաձայն կը գտնուէին գործին մտադրութիւն չդարձնելու մէջ, որովհետև իրենց բոլոր ոսկւոյ և խաղաղութեան հանելը պատրիարքութեան համար էր, և երկուքն ալ պէտք ունէին կառավարական պաշտպանութեան, և չէին կրնար կառավարութեան հակառակ խօսիլ։ Անոնց անհոգութեան հանդէպ գործին հետամուտ կը գտնուէր Սրբստակէս Խարբերդցի վարդապետ, որուն օգնական կ՚ըլլար Դարանաղեցի Գրիգոր վարդապետը, որ 1628՚ին Երուսաղէմէ դարձած էր, շփոթութեան միջոցին։ Ասոնք գրաւուած եկեղեցին ետ առնելու անհնարութեան առջև, յաջողեցան արտօնութիւն առնալ նոր եկեղեցի մը շինելու և պայծառացնելու, լքեալ և աւերակ յոյն եկեղեցւոյ տեղը, որ է այժմեան Գալաթու Ս. Հրեշտակապետ եկեղեցին։ Երբոր այդ խնդիրը կը յուզուէր և կը կարգադրուէր, Կեսարացին աթոռէն հեռացած էր 1627՚ին Լեհաստան երթալու դիտմամբ, իսկ Կ-Պոլսոյ մէջ պատրիարքութեան փոխանորդ կը թողուր Յովհաննէս Երզնկայեցին, որ Պակթամուրճազ կոչուած է, հաւանաբար Թէմուր գէկէ չաւուշ իմաստով, և անոր ալ օգնական էր Մինաս Կարնեցին։ Ասոնք Սրբստակէս Խարբերդցիին և Գրիգոր Դարանաղեցիին յաջողութիւնը իրենց և իրենց պետին անպատուութիւն նկատելով, երկուքն ալ կը հալածէին, և անոնք ալ պարտաւորուած էին ապաւինիլ Գալաթիոյ եկեղեցին (11 ԱՄՍ・16), որ Դարանաղեցիին իշխանութեան ներքև կը գտնուէր, իբրև յարակից մաս Ռումելիի վերակացութեան (§ 1604)։ Չենք կրնար ճշդել թէ որ օր Կեսարացին Կ-Պոլիսէ մեկնեցաւ, վասնզի Կամենից հասնիլը գիտենք, բայց ինչ ճամբով գացած և առաջ որ տեղեր հանդիպած ըլլալը չենք գիտեր, ինչպէս նաև չենք գիտեր թէ ինչ միտքով Կոստանդնուպոլիսէ կը հեռանար տագնապալի ժամանակին մէջ։ Ուստի անորոշ կը մնայ, թէ պատուաւոր նահանջ մըն էր ըրածը, առանց հրամանաց արքունեացն մնացած ըլլալուն համար, թէ ոչ Մելքիսեդեկի հետ երթալն ու մեռնիլը և Լեհաստանի մէջ սկսուած երկպառակութիւնները, առիթ կ՚ընծայէին գործերը քննելու և կարգադրելու, և միանգամայն օգտակար արդիւնք մըն ալ ձեռք բերելու։ Տեղ մը հարևանցի յիշուած է թէ Լեհաստան չանցած Էջմիածին հանդիպած ըլլայ (11 ԱՄՍ 19), սակայն ոչ տեղեկութեան աղբիւրը ցուցուած է և ոչ նպատակը բացատրուած։ Դավրիժեցին ասանկ բան մը չյիշեր բնաւ, և Կեսարացիին Կ-Պոլիսէ մեկնելուն և Լեհաստան հասնելուն թուականներն ալ չեն ներեր Էջմիածինի ուղևորութեան պէտք եղած ժամանակը պարունակել։ Իսկ Գալաթու Նորաշէն եկեղեցին յետ քանից աւուրց մխասնեցաւ, զի հրաշագործութեան եղև, և որովհետև Սրբստակէս Պրուսա անցած էր, Դարանաղեցին գլուխ կանգնեցաւ նորոգութեան, և մեծահանդէս տօնիւ և ցնծութեամբ նաւակատիքը կատարեց։ Բայց երբ ծախուց հանգանակութեան սկսաւ, քահանաներ անոր թշնամացան իրենց հասոյթին կարճելուն համար, և փոխանակ շնորհակալութեան վիրաւորեցին որդեակք, և Դարանաղեցին խաղաղութեամբ նորէն Գալաթիա քաշուեցաւ (ԴՐՆ)։

ԳԱԼԱԹՈՒ ԵԿԵՂԵՑԻՆ

**1641**. Նիկոլ եպիսկոպոս որ 1626՚ին սկիզբները Մելքիսեդեկէ ձեռնադրուած և նպովքի սպառնալիքով աթոռին տիրացած էր (§ 1638), տակաւին երիտասարդ ու բնիկ Իլվովցի, տեղացի Լեհերուն հետ սերտ կապակցութեան մէջ, և հօրը հարստութեամբը պե-

ԿԵՍԱՐԱՑԻՆ ԵՒ ՆԻԿՈԼ

*տական յարաբերութիւններ ալ կապած, իւր հայազգութենէն չատ թուլցած, և Լեհերուն ազգութեան և կրօնքին համակերպութիւն զգացած էր, և այդ ոգւով ալ կը վարէր իւր եպիսկոպոսութիւնը, թէպէտ և պաշտօնապէս հայադաւանութիւնը կը պահէր։ Դէպ եղաւ որ 1627'ին վերջերը Կամենից եկաւ, և հոն Խաչկոյ անուն սարկաւագ մը աբեղայ ձեռնադրեց Ոնոփրիոս անունով, դեկտեմբեր 2'ին։ Ճիշտ այս օրերուն Կամենից կը հասնի Կեսարացին։ Նիկոլ, կամ այն է որ չտապ ունէր Կամենիցէ մեկնիլ՝ և միանգամայն նորընծային առաջին պատարագին ներկայ գտնուիլ, կամ թէ թեթեւօրէն կը նայէր Հայ ծէսին պահանջներուն վրայ, 15 օրէն դեկտեմբեր 16'ին կ'ուզէ Ոնոփրիոս աբեղան քահանայացնել և առաջին պատարագը ընել տալ, և Կեսարացին ալ հանդէսին կը հրաւիրէ։ Բայց սա, խստապահանջ պահպանող անձ մը, հրաւէրը մերժեց, և միանգամայն պնդեց թէ* պարտ է լեալ դաւանել ըստ աւանդութեան Հայաստանեայց եկեղեցւոյ։ *Միւս կիրակիին Նիկոլ իւր միտքը պնդեց և Կեսարացին նորէն հրաւիրեց, բայց նա՝* խօսն Ձեր նոյն լինի *պատասխանելով, կրկին ընդդիմացաւ (ԴԱՎ. 282)։ Այս անգամ Նիկոլ իւր կամքը կատարեց, և դեկտեմբեր 23'ին Ոնոփրիոս նորընծային առաջին պատարագը ընել տուաւ, միանգամայն փակել տալով միւս եկեղեցին, որ Կեսարացին այն տեղ արարողութիւն չկատարէ։ Սա ալ վշտանալով հրատարակեց, թէ* [illegible] լինի որ այսօր ծնաւ յայտն եկեղեցին, և այս[illegible] տօնել եղեն երկուց [illegible] եկեղեցեաց դրօշմն. *ու ժողովուրդը մնաց* առանց ժամ և պատարագի, *թէպէտ դեկտեմբեր 24 երկուշաբթին Դաւթի մարգարէին տօնն էր, և յաջորդաբար* էին [illegible] տօներն *(ԴԱՎ. 283)։ Նիկոլ իւր հակառակութիւնը յառաջ տանելով, Կամենիցի կառավարիչին գնաց, որուն անունն էր Լուքաչ, և բաւ թէ* այդ վարդապետ, որ ի Թաւրէզ աշխարհէն եկեր է, [illegible] է եղեր, *և Լուքաչ խեկոյն Կեսարացին արգելքի տակ առաւ* [illegible], *և հազիւ զօրաւոր միջնորդութեանց վրայ հաճեցաւ որ* դառնայ ընդ որ եկեալն էր, *և Կեսարացին ստիպուեցաւ 1628'ին սկիզբները դառնալ Բուղդան, որ է Մոլտաւիա, և անկէ Ռումէլի անցնիլ, հարկաւ Կոստանդնապոլիս դառնալու մտքով, ուր պատրիարքական աեղակալ թողած է Յովհաննէս Երզնկացին։ Ճանապէն* գրեաց գիր բանադրանաց, նզովից և կորանաց ի վերայ Նիկոլին, *(ԴԱՎ. 284), և կ'ըսուի թէ* եօթն թիզ էր թուղթն *(ԿԱՄ. 206)։ Գիրը Իլվով ալ հասցնել տուաւ, միայն թէ Նիկոլ* ոչինչ հոգաց, *և անտարբեր կերպով շարունակեց իւր գործն ու պաշտօնը, և* կայր ի կարգի իւրում *(ԴԱՎ. 284)։ Սակայն չչուկը տարածուեցաւ ժողովուրդին մէջ, որ անոր ձեռնադրութեան հակառակած էր, և միայն Մելքիսեդեկի բանադրանքին սպառնալիքովը զսպուած։ Նիկոլի եպիսկոպոսանալէ ետքն ալ ունեցած կենցաղէն և լատինամիտ ընթացքէն զզուած ըլլալով, առիթ գտաւ իւր աժգոհութիւնը յայտնապէս ցուցնել, և* որ յաւէտ զօրանայր ներհակն ի վերայ Նիկոլին *(ԴԱՎ. 284)։ Լատին պատմիչն ալ կը վկայէ, թէ Նիկոլ,* որ համբաւեալ էր յանդուգն [illegible] և [illegible], ի սոյն ժամանակի [illegible] իւր յորոց [illegible] Հայոց *(ԲՈՆ. 154), որք են ազատ հայաքաղաքին երկոտասանից ժողովին անդամները, Վոյթ կոչուած իշխանապետի մը նախագահութեամբ (ԲԺՇ. 116)։*

**Կ-ՊՈԼՍՈՅ ՄՐՑԱԿԻՑՆԵՐ**

**1622**. *Կեսարացին երբոր 1628'ին Լեհաստանէ վտարուեցաւ, միտքը իւր պատրիարքական աթոռը գրաւելն էր անշուշտ, զոր յանձնած էր Յովհաննէս Երզնկացիին պահպանութեան, կամ լաւ եւս պաշտպանութեան, սակայն իրաց կացութիւնը բոլորովին փոփոխուած գտաւ։ Կեսարացիին բացակայութիւնը ակարութիւն բերած էր իւր կողմին, Խուլն ալ արդէն անարգուած և ազդեցութիւնը կորուսած, մանաւանդ Մելքիսեդեկի գալէն ետքը տեղի ունեցած գայթակղութեանց երեւէն (§ 1637), պէտք եղաւ Կ-Պոլսէ հեռանալ, և ինքն ալ բռնեց Մելքիսեդեկի և Կեսարացիին ճամբան, և ուղեւորեցաւ Լեհաստան։ Հարկաւ մեծ եղած պիտի ճանչնանք Լեհաստանի Հայ գաղութին ստացած կարեւորութեան և դրամական կարողութեան համբաւը, որ բոլոր*

*բարձրաստիճան եկեղեցականներ իրարու ետեւէն այն կողմեր կը դիմէին՝ բախտաւորուելու ակնկալութեամբ։ Եղելութեանց յարակցութիւնները կը թելադրեն կարծել, որ Կեսարացիին և Նիկոլին մէջ տեղի ունեցած հակառակութեան, և Կեսարացիին և Թուլին մէջ տիրող անհաշտելի ներհակութեանց հետեւանօք, Նիկոլ ինքն դիմում բրած ըլլայ Թուլին, որպէսզի անոր հեղինակութեամբ և ներկայութեամբ իւր դիրքը զօրացնէ, և Կեսարացիին նղովքին պատճառով ծագում առած տխուր տպաւորութիւնները ջնջէ։ Իրօք ալ կը տեսնենք որ Թուլը լաւ ընդունելութիւն կը գտնէ Լեհաստանի մէջ, և հաշտ կ՚ընթանայ Նիկոլի ուղղութեան հետ։ Երբոր Կեսարացին և Թուլը, երկու հզօր մրցակիցներ Կոստանդնուպոլսոյ պատրիարքական գործունէութենէ կը քաշուին, ասպարէզը բաց կը մնայ Վանեցիին, որ 1613՚ի բռնիւմէն ելեր (§ 1604), Կոստանդնուպոլսոյ մերձաւոր Ասիակողման վիճակներուն վերակացութիւնը կը պահէր, և իրօք ալ կը յաջողի 1628՚ին տիրանալ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան, և արքունական հաստատութիւնն ալ ընդունիլ (11 ԱՄՍ. 74)։ Թէ Կեսարացին Կոստանդնուպոլիս կը հանդիպի կամ ոչ, ճշդելու աղբիւր մը չունինք, միայն գիտենք թէ նա Կեսարիա գացած է (ՔՈՆ. 155), և իւր պահեստի առաջնորդական վիճակը քաշուած է, առանց ընաւ իւր միտքէն հրաժարելու, որ էր կրկին Կոստանդնուպոլսոյ աթոռը գրաւել։ Պատմական յիշատակներ մեզի ընդհանուր եղելութիւններ միայն ցոյց կու տան, իսկ անոնց կապակցութեան համար բաղդատական ուսումնասիրութիւններով կ՚առաջնորդուինք։ Այսու հանդերձ չենք կրնար որոշ բան մը ըսել Կեսարացիին Կեսարիոյ մէջ ունեցած գործունէութեան, և իւր մտադրութեան համար գործածած միջոցներուն վրայ։ Նորէն դառնանք էջմիածին։*

**1643**. *Երբոր Մելքիսեդեկ էջմիածինէ կը հեռանար (§ 1634), Աւետիս ալ մեռած էր (§ 1618), Դաւիթ ալ էջմիածինէ ձեռք քաշած Ասպահան կ՚ապրէր (§ 1613), մէջտեղ կը մնար միայն Սահակ Դ Գառնեցին, իբր Մայրաթոռին տէր, թէպէտ մեր դրութեամբ հնար չէ զայն գահակալ կաթողիկոս նկատել, ցորչափ Դաւիթ Դ Վաղարշապատեցին, որ օրինաւորապէս յաջորդած էր Գրիգոր ԺԲ Վաղարշապատեցիին (§ 1581), ոչ հրաժարած էր և ոչ ալ գահընկէց եղած։ Այլ կը պահէր իւր աստիճանը ու պաշտօնը, թէպէտեւ բռնադատեալ էջմիածինի գործերուն չխառնուիլ, և ընկճուած արտաքին իշխանութեամբ և կաշառքի զօրութեամբ բռնացող աթոռակիցներէն, որոց վերջինը Սահակ ալ առանց իրեն այդ աստիճանին բարձրացած էր։ Սահակ Ամիրգունայի ընծայագիրով և Մելքիսեդեկի խնդրագիրով Շահաբասէ ճանչցուած էր (§ 1633), որովհետեւ* յանձին կալեալ զտունն, այսինքն զՇամշորդոյ գաւառն, զոր ի կողմանէ Լոռոյ գաւառն էր *Մելքիսեդեկ (ԴԱՎ. 175)։ Բայց* տեղն, *այսինքն հաստատութեան հրովարտակ առնելու գործը երկարձգուեցաւ Շահաբասին տեղափոխութեանց պատճառով, թէպէտ թուղթը գրուած ու պատրաստուած էր։ Թահմազղուլի բէկ, Ամիրգունայի որդին, որուն գործը յանձնուած էր, Շահաբասի ետեւէն պտտեցաւ Ֆահրապատ, Ղազբին, Սուլթանիէ, Արտաւիլ, և դարձեալ Սուլթանիէ. Երեւան ալ գալ պարտաւորուեցաւ իւր հօրը հիւանդութեան պատճառով, ուր և հաստատուեցաւ հօրը մահուամբը. բաղ ալ կայ թէ իւր հայրը սպաննած ըլլայ (ՁԱՔ. Ա. 62)։ Այս պատճառով Սահակ նոր հետապնդութիւններ ըրաւ (ԴԱՎ. 176), և հազիւ թէ 1626՚ին ձեռք ձգեց ցանկացեալ հրովարտակը (ԴԱՎ. 230)։ Գործին ուշանալուն պատճառ էին կերպով մը Պարսկաստանի Հայ գաղութին գլխաւորները, խօջայ Նազարը գլուխնին, որոնք չէին ուզեր ճանչնալ Սահակի կաթողիկոսութիւնը, և իրենց մօտ գտնուող ծերունի Դաւիթը կը գրգռէին, որ մէջտեղ ելլայ, Շահաբասին դիմէ, իւր իրաւունքը պաշտպանէ, և Սահակի հաստատութիւնը արգելէ։ Իրօք ալ Դաւիթ շարժուեցաւ, Շահաբասին մօտ ալ գնաց. բայց Սահակ ետեւէն հասաւ, իրարու ալ հանդիպեցան, և Սահակ ճարպիկ եղաւ իւր գործը յաջողցնել, և Դաւիթ մինչեւ իսկ իւր բուն նպատակը ծածկեց, յայտնելով թէ*

**ՍԱՀԱԿԻ ԸՆԹԱՑՔԸ**

*վան քօրծոյ էմոյ գնամ, որ ողտոտօրեան բոտղբ ատնէմ չօրբլօկէն, այսինքն ապահովէ իրեն պարէնին համար տրուած ագարակին հասոյթը* (ԴԱՎ. 176)։ *Որչափ ալ Սահակ արքունի հրովարտակ ստացաւ, սակայն Նոր-Ջուղայեցիք և բոլոր Պարսկահայ գաղութներ՝ ոյնօտ էօտ ող ընկօլան զՍահակ կաբողիկոան, և միշտ Դաւիթը իրենց կաթողիկոս ճանչցան* (ԴԱՎ. 177), *թէպէտև անկէ ալ գործունէութիւն մը չէին սպասեր, և բոլոր մտադրութիւննին դարձուցած էին Մովսէս Տաթևացին առաջ անցընելու*։

**1644**. *Մովսէս կը շարունակէր իւր առանձնական, բայց միանգամայն գործունեայ կեանքը վարել Ս. Անանիայի վանքին մէջ* (§ 1633), *երբ 1625’ին օր մը այնտեղ իրեն կը հանդիպի Բայինդուր բէկ անուն պալատական մը, որ Երևան եկած էր ծողմէն ղողոյ և ղոզքէօան վան բոփոտօրէն, և Ամիրգունա կառավարին հետ է զբօոանօ էփօն շէքէն* (ԴԱՎ. 220)։ *Մովսէս հիւրերը պատուելու համար եօթնական հատ ողէօրն մօմ նուէր ներկայեց։ Բայինդուր հիացած մնաց մոմերուն ճերմակութեան վրայ, որ անծանօթ էր այն կողմերը, և որուն արհեստը Մովսէս սորված էր Երուսաղէմ եղած ատենը* (§ 1603)։ *Բայինդուր յայտարարեց թէ մոմերը կը պահէ որ շահին ընծայ տանի, և Ամիրգունա իւր եօթը մոմերն ալ յանձնեց նոյն նպատակին, և Մովսէս ալ իւր կողմէն եօթը հատ ևս աւելցուց։ Բայինդուր իւր պաշտօնը լրացնելով Շահաբասին դարձած ատեն, անոր ներկայացուց 21 ճերմակ մոմերը, պատրաստողին վրայ ալ գովութեամբ խօսեցաւ։ Շահաբաս իսկոյն Ամիրգունայի գրեց որ Մովսէս եպիսկոպոսը իրեն ղրկէ, ինչ որ գործադրուեցաւ, և Մովսէս մինչև Պաղտատ գնաց, ուր կը գտնուէր Շահաբաս, և շօրՋ նօթեօղ գօտէրօղմէր 1626 գարնան սկիզբը։ Թագաւորը հրովարտակով հրամայեց Ասպահանի քաղաքապետ Լալա բէկի, որ Մովսէսին յարմար տեղ մը ցուցնէ, երեք յարմար աշակերտներ ընտրէ, և 100 լիտր մոմ տայ, որ արհեստը անոնց սորվեցնէ։ Ըստ այսմ ալ գործադրուեցաւ։ Ասպահանի մէջ Թիլիմխանի այգին Մովսէսին յատկացուեցաւ, Ծառուխ և Ղարչղայ և Բէհզատ Պարսիկներ աշակերտ նշանակուեցան, և մինչև տարւոյն վերջերը Մովսէս աշակերտները վարժեցուց, և ճերմկցած մոմերուն հետ ու խօջայ Նազարի միջնորդութեամբ ներկայացան Շահաբասի, երբ Ֆահրապատի ձմերոցը կը գտնուէր։ Շահաբաս շօյծ ղօօաքծօյօօ, և մոմերը է Յէօօ օօէօղ զբօնօյբ, և որովհետև Աստուածայայտնութեան տօնը մօտ էր, խօջայ Նազարի յանձնարարեց, որ Մովսէս ժծօօ հօնփէօէօ պատրաստէ Ֆահրապատի եկեղեցին, ուր ինքն ալ ներկայ պիտի գտնուի։ Տարաթ օր կ’իյնար 1627 յունուար 6’ին տօնը։ Մովսէս ոչ միայն առմենայն խնամքով պատրաստութիւնները կատարեց, և բոփէօջ զէրէօօ ողէօօէ մօմօ մօրօօղօփ, այլև գիշերը հսկումով անցուց, որպէս զի Աստուած շնորհօլէ ցօօցցէ զօծնօխմբօօբէօնն օյլօհօօօօ բոփօօօրէն* (ԴԱՎ. 231)։ *Իրօք ալ Շահաբաս չափազանց գոհ մնաց, և երբ կ’ուզէր դրամով կամ կալուածով վարձատրել, խօջայ Նազար դիտել տուաւ, որ Մովսէս ղօշէօրհօօ և զընչօօ նօրօ ղօնց օրօրէօղ է, և թելադրեց անոր տալ զլօօօօրօրօօբէօնն օօօրք էջմօծնէ բոփօօօրօկօն նօմօօխօ* (ԴԱՎ. 232)։ *Սահակ տեղեկութիւն առնելով ջանաց գործը արգելել, առարկելով թէ շօղմ օրօրէօղ էօ էոյ, և դիւանբէկին, այսինքն արքունի քարտուղարին և մեծամեծներու մօտ աշխատեցաւ, սակայն ողէօղ օփօէցօօ, և իրեն ըսուեցաւ, թէ թէպէտ Մովսէսի փօօօօ զէջմօծէն, զնօրէն լօօօօրօրօօբէօն փօօօօ, և ող զկօբողէկօօօբէօնն* (ԴԱՎ. 178)։ *Ամէն դժուարութիւններ հարթուելով, Մովսէս Ֆահրապատէ Երևան և Երևանէ Էջմիածին եկաւ, և ժծօօ փօօօօ, և օնղօփօօմ ցնծօօբէօմբ՝ ող ժօյն էօր, օյլ և օժնօյն օրէօփօնէէց, գործի ձեռնարկեց է Վօրփօվօօէ ղօհօց էբէօօշօբօբ օօօօրն, որ է 1627 յունիս 25, և ոչ 23, ինչպէս աւելցուցեր է Ոսկանի օրինակը* (ԴԱՎ. 232)։

**1645**. *Դավրիժեցին ողբողորմ չեշտերով կը նկարագրէ Էջմիածինի մայր տաճարին այն օրուան վիճակը, և կարևոր կը սեպենք զայն քաղել, իբրև մտադրութեան արժանի պատմական պարագայ մը։ Պէտք է նախ*

ՄՈՎՍԷՍԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

ԷՋՄԻԱԾԻՆԻ ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆ

յիշենք, որ ինչ ինչ կտորներ բոլոր քանդուած ու տարուած էին (§ 1610), և հարկաւ հետզհետէ մնացած էին պատառուածները. և լքուած չէնքը հետզհետէ վնասներ կրած էր: Դուրսի կողմէն կաթողիկէին կամ գմբէթին գագաթը ինկած էր, տանիքին և չորս կողմի պատերուն քարերը քանդուած և թափուած էին, յատակներու քարերը փշրուած և ծակոտուած, լուսամուտներուն վանդակները պակսած, այնպէս որ ներսի կողմը թռչուններու [illegible] լեցուած էր, զեռուններու և սողուններու որջ դարձած, և աղտեղութեանց համբարանոց եղած: Մայր տաճարին բակը աւերակներով և աւելորդներով հետզհետէ դիզուած էր, և հողն ու մոխիրը և աղբիւսը մինչեւ եօթը կանգուն բարձրացած՝ գոցած էր տաճարին վարի մասերը և չուրջանակի եղող աստիճանները: Ծածկոց և զարդ չէր տեսնուեր բնաւ եկեղեցւոյն մէջ, և ոչ ալ կանթեղ կամ մշտավառ լոյս, այնպէս որ հազիւ թէ [illegible]: Իբրեւ սպաս ալ բան մը չկար, [illegible], և ոչ ուրիշ կարեւորներ: Աւանդատունն ալ գրեթէ դատարկուած էր, զի ինչ որ կար՝ կաթողիկոսներ [illegible], և վերջին աջերն ալ Մելքիսեդեկ մեկնելէն առաջ փոխառութեան համար գրաւի էր տուած (§ 1634): Տաճարին չուրջը եղող բնակութեան չէնքերն ալ [illegible] (ԴԱՎ. 233): Կաթողիկոսներ Երեւան կը բնակէին, եւ վանքին մէջ մնացած էին միայն քանի մը հատ [illegible] անոնք ալ [illegible] կ'անցընէին, և անոնք իսկ [illegible] չրջակայ գիւղերու մէջ կը չրջէին (ԴԱՎ. 234): Մովսէս Տաթեւացի գործի ձեռնարկելով նախ բակին դիզուած աւելորդը ջանաց վերցնել տալ, և գործը դիւրացնելու համար օգտուեցաւ գետին ջուրէն, զոր [illegible], և փորուած մասը հոսանքին տուլին, որ հողը կը տանէր և քարը կը մնար, եւ այսպէս եղեւ [illegible], և քարերը հետզհետէ իրենց տեղերը չարուեցան պատերուն վրայ: Անկէ ետքը գմբէթն ու տանիքը նորոգեցին, քանդուած եւ պակսած սալերը լրացնելով: Այդ առթիւ կը յիշուին տաճարին չափերը, ներսի կողմէն, պատերէն զատ, 50 կանգուն երկայնութիւնը, 48 կանգուն լայնութիւնը և 35 կանգուն բարձրութիւնը մինչև կաթողիկէին պորտը (ԴԱՎ. 235): Անկէ վերջ չրջապատ պարիսպ մը կանգնեցին ի հողոյ, տաճարին պատերէն՝ արեւելքէն ու արեւմուտքէն 63 կանգուն, և հիւսիսէն ու հարաւէն 56 կանգուն հեռու, և ութը բուրգեր կամ աշտարակներ՝ անկիւնները և մէջտեղերը: Պարիսպին ներսի կողմն ալ՝ արեւմտակողմը չինուեցան [illegible] այսինքն է պաչտօնատուն և հիւրանոց, հիւսիսակողմ և արեւելակողմը [illegible], և հարաւակողմ [illegible], և համբարանոցներ: Այս ամէն մասերը չինուեցան [illegible], և վայելուչ յօրինուածով (ԴԱՎ. 234):

**1646.** Մովսէս այդ գործերը լրացնելու համար իրեն զօրավիգ և օգնական ունեցաւ նախ՝ տատ եւ անդ գտնուած հոգեւոր և բարեպաշտ եկեղեցականներ, որոնք իր չուրջը հաւաքուեցան, և որոց չատերը [illegible] խումբէն էին, և երկրորդ՝ [illegible], որոնք [illegible], և ոչինչ խնայեցին [illegible], վստահ ըլլալով Մովսէսի անձնէնդ և ճչգապահ աչխատութեանց վրայ (ԴԱՎ. 232): Նա Մայրաթոռոյ նիւթական նորոգման հետ, անոր բարոյական բարեկարգութեան ալ հետամուտ եղաւ, վանական կենցաղ հաստատեց, աւանդի դրուած կամ վաճառուած սպասներ վճարելով ազատեց, և գլխաւոր գործերէն մին եղաւ [illegible] մը բանալ Ցովհաննավանքի մէջ՝ իբրեւ կատարեալ դպրանոց կամ դպրեվանք, ուսկից առաջ եկան [illegible], ամէնն ալ [illegible] և [illegible], զորս հետզհետէ ցրուեց զանազան կողմեր: Ասոնք մէկ կողմէ [illegible]

ԳՈՐԾԱԿԻՑՆԵՐ ԵՒ ՆՊԱՍՏՈՂՆԵՐ

հաստատէին զկարգս և զկրօնս ուղղափառական հաւատոյս և եկեղեցական աւանդութեան, և ընկեցեալ կործանէին զհակառակորդս ճշմարտութեան, և միւս կողմէն շինէին զեկեղեցիս, և կը նորոգէին ու կը պայծառացնէին վանքերը՝ որք ամայացեալք ի խառնակ կոյն: Այս կերպով Մովսէսի նախանձայոյզ աշխատութեանց շնորհիւ, վանքեր կը լեցուէին միաբանօք և աբեղայիւք և կրօնաւորօք, իսկ եկեղեցիք՝ լցան երիցամբք (ԴԱՎ. 235): Մովսէսի առանձնած պաշտօնը լոկ լուսարարութիւն էր, որ է փակակալութիւն հին բառով, կամ լուսարարապետութիւն նոր կոչմամբ. բայց Էջմիածին իրմէ զատ տէր չունէր, և անպաշտօն կաթողիկոսութիւն էր իր ըրածը: Այն որ պաշտօնապէս գահակալ կաթողիկոսի անուն ունէր, Սապահան կը գտնուէր ամէն գործէ ձեռնթափ, և ինննամեայ զառամեալ տարիքի մէջ. իսկ այն որ արքունի հրովարտակով ճանչցուած՝ գործունեայ աթոռակիցի պաշտօնը պիտի վարէր, հարկահանի դերը կը վարէր կարեւոր գաւառներու մէջ, և երկուքէն ոչ մէկը եկեղեցւոյ և ազգի հոգածութեան գործերով կը զբաղէր: Իրաւունք ունէին ուրեմն ժողովուրդք Հայոց յընդհանուր աշխարհս բնակեալք, որ այդ կաթողիկոսաց անկարգութեանց յանձնուցեալք, կամ լաւ ևս առանց կաթողիկոսի մնացած, կամօք և յօժարութեամբ և կաթոգին սրտիւ կը փափաքէին, և ժողովեալք և եպիսկոպոսք և երիցունք որք՝ գրովք և աղաչանօք թախանձէին և կը խնդրէին Մովսէսէ, զի յանձն առցէ զաթոռ կաթողիկոսութեան (ԴԱՎ. 236):

**ՍԱՀԱԿԻ ՓԱԽՈՒՍՏԸ**

**1647.** Սահակ Գառնեցին Շահաբասի հրովարտակը ստանալով (§ 1643) կը կարծէր թէ ամենայն ինչ իրեն յաջող պիտի քալէ, և իրեն հետեւորդ կազմած զօրքերը, այսինքն պետական պաշտօնեաներու զօրութեամբ և բռնութեամբ պիտի կարենայ իւր հօրեղբօր Մելքիսեդեկի գլուխ հանել չկրցածը ինքն կատարել: Այդ միտքով պտոյտներ կը կատարէր Հայաստան ու Պարսկաստան, բարեկեցիկ հայաբնակութեան քաղաքները, բայց ոչ մի տեղ ընդունելութիւն չէր գտներ, և ոչ իսկ իբրեւ կաթողիկոս կ'ընդունէին զինքն, զի ոչ թէ ազգային ընտրութեամբ, այլ լոկ իւր հօրեղբօր կամքով ծնունդ առացեր էր, մինչ նոյն ինքն հօրեղբայրն ալ՝ ամէնուն ատելի եղած ու զզուանք պատճառած անձ մըն էր: Միւս կողմէն ինչ որ բռնութեամբ և կեղեքելով ձեռք կը ձգէր, այն ալ հետեւորդները գոհացնելու իսկ չէր բաւեր, և այսպէս հետզհետէ կ'աճէին վըճարուելիք գումարները, թէ տուրքին և փոխառութեանց, և թէ հետեւորդներու ապառիկ պահանջներուն բարդուելովը: Տարի մը և աւելի այսպէս անցուց Սահակ, օր ըստ օրէ յուսահատութեան մատնուելով, և երբ 1627 ամառուան միջոցին Խոյ կը գտնուէր, միտքէն կ'անցրնէր ինքն ալ իւր հօրեղբօր ճանապան բռնել, թագաւորն ի զօրքերն անցանել յերկիրն Օսմանցւոց (ԴԱՎ. 179): Երբ այդ միտքերը կ'որոճար, նամակ ստացաւ Երեւանի կողմը գտնուող իւր բարեկամներէն, թէ այժմ Թահմազղուլին կը վարէ կուսակալութիւնը, որ պատրաստ է իրեն օգնել, եթէ փութայ Երեւան գալ: Գրողներն էին Մանուէլ Խորվիրապեցին, Մելքիսեդեկի հին գործակից մը (§ 1584), Մկրտիչ Հաւուցթառեցին սպանուած Մանուէլի յաջորդը (§ 1591), այլովք հանդերձ (ԴԱՎ. 179): Սահակ փութաց հրաւէրին անսալ, և Խոյէ Երեւան եկաւ, բայց ակնկալութիւնը չիրականացաւ, ընդհակառակն Թահմազղուլի ալ պահանջումները խստացուց, ուրովհետեւ ապառիկ գումարը 800 թումանի էր եղած: Սահակ երբ տեսաւ որ խաբուեցաւ, որոշեց իւր առաջին խորհուրդը գործադրել: Կը մօտենար 1628'ին Ծնունդը. Սահակ այնպէս կեղծեց թէ կուսակալը ուզած է մեծահանդէս տօն մը տեսնել, և թէ Մովսէս, որ Երեւան կը գտնուէր, իրմէ խնդրած է պէտք եղած սպասները Էջմիածինէ բերել: Այս պատրուակով իւր արագընթաց ձին հեծաւ, և Էջմիածինի ճանապան բռնեց: Բայց կէս ճանպէն չեղեցաւ, զգեստը փոխեց ի կերպ զօրականի, և արշաւասոյր քալելով յառաջացաւ դէպի Նախիջեւան, բայց քաղաք չհանդիպեցաւ, այլ Տարաշամբ գիւղի նաւատեղին Երասխը անցաւ, և առանց ուրեք կանգ առնելու քերեց Ջորս և Խոյ քաղաքները, անցաւ սահմանագլուխը, մտաւ Օսմանեան հողը, և հասաւ Վան քաղաքը, և հոն մնաց՝ ուրախանալով որ

*«հոգւովքն ելեալ է յերեւոյ աշխարհէս»։ Սահակի փախուստը տեղի կ'ունենայ 1627 դեկտեմբերին։ Պետական պաշտօնեաներ սկսան Մովսէսը նեղել, իբր թէ նա թելադրած ըլլայ Սահակի փախուստը. սակայն սա կրցաւ չուտով հաստատել, թէ ինքն ամենեւին տեղեկութիւն չունի, և թէ Սահակ չինծու խօսքեր դրած է կուսակալին և իւր բերանը (ԴԱՎ. 180)։ Այս կերպով Սահակ Մայրաթոռի գործերուն հետ յարաբերութիւնը խզեց, և փակուեցաւ իւր կեղակարծ կաթողիկոսութիւնը, որ մինչեւ իսկ հակաթոռութիւն պիտի կարենայինք ըսել, եթէ աթոռակիցներու չառութիւնը ավորութեան անցած չըլլայինք։*

**1648**. *Կատարեալ եկեղեցական անիշխանութեան տարի մը կրնանք ըսել 1628 տարին, երբ Մայրաթոռը ըստ ամենայնի անտէր և անտէրունջ վիճակ մը ունէր պաշտօնապէս, թէպէտ իրապէս Մովսէսի խնամքի ներքեւն էր, բայց նա կաթողիկոս չէր։ Իսկ կաթողիկոսութեան անուն կրողներէն մէկը զառամած՝ ձեռնթափ կ'ապրէր Աստապատ, միւսը փախստական՝ առանձնացած էր Վան։ Մովսէս, կաթողիկոսութեան թեկնածու չէր, բայց սրտացաւ հոգածութեամբ պէտք եղած ջանքերը կ'ընէր էջմիածինը վերականգնելու։ Այս կողմէ յատուկ մտադրութեան կէտ մը դարձած էր տարեկան 100 թումանի տուրքը, որ չվճարուելով բարդուած էր, և պարտքը կը մնար միշտ, թէպէտեւ պաշտօնապէս պարտական մը չէր մնացած մէջտեղ։ Մովսէս դիմեց Շահաբասի սիրական խօճայ Նազարի, եղանակ մը գտնելու համար, բայց նա խորհուրդ տուաւ պատեհ առիթի սպասել, դիտել տալով թէ «այս Նազար յոյժ արժանաւոր է և պիտանի, յայսպիսի շահոց արժանաւոյ ու շնոց տանէ»* (ԴԱՎ. 236)։ *Ծիշդ այդ օրերուն տեղի կ'ունենայ Շահաբասի մահը Ֆահրապատի մէջ, որ Դավրիժեցին 1629 յունուար 7'ին կը դնէ* (ԴԱՎ. 237), *սակայն օտար պատմագիրներ 1628'ին կը դնեն* (ՏՊէ. 357)։ *Դավրիժեցիին թուականը յայտնապէս գրիչի կամ գրչագիրի սխալանք է, զի ինքն իսկ, Շահաբասի մահուընէ ետքը «ամենայն» Մովսէսը արքունիքի մէջ*

ՀԱՐԿԻՆ ՎԵՐՋԱՑՆԵԼԸ

*դեգերած* (ԴԱՎ. 237), *և անկէ Երեւան եկած, և զանազան գործեր կատարած ըսելէ ետքը, 1629 յունուար 13'ին զայն կաթողիկոս օծուած կը դնէ* (ԴԱՎ. 239)։ *Շահաբաս իւր որդիները կասկածով մեռցնել կամ կուրցնել տուած էր, որով իրեն յաջորդեց Սամ-Միրզա թոռը, որուն անունը Սէֆի փոխուեցաւ, Սէֆեանց հարստութեան նախահայրին անունով* (§ 1521), *և եղաւ ու կոչուեցաւ Շահ-Սէֆի, կամ Շահսէֆի,* (ԴԱՎ. 237)։ *Նազար և Ջուղայեցիք պարագայէն օգտուելու համար «ըղձելոց փոյթով» Մովսէսը Ասպահան հրաւիրեցին, որովհետեւ նոր գահակալութեանց առիթով մեծ շնորհներ ընդունելու պատեհն էր, «ոխապահելով զնա ամէն գահէկան, և այլոց ինչ պատուականս» ընծայ պատրաստեցին, նախարարներն ալ շահեցան պատեհ միջոցներով, և «ամէն ոք* (ԴԱՎ. 237) *բազմաբերք ողորմութեամբ և յոյժ բազում գանձս ծախսելով, իբր ինն հազար թուման»* (ԴԱՎ. 239), *յաջողեցան ստանալ «Նախապատւական նամակ», որով կը ներուէր և կը ջնջուէր էջմիածինի վրայ ծանրացող հարիւր թումանի տարեկան տուրքը։ Ասոր վրայ Մովսէս ու Հայ իշխաններ բոլոր պետական պաշտօնատուները շրջելով, «այնքան առխոտեցան, մինչ զի յամենայն ժողովից, որ և քրեալ կայր բանն այն, յամենայնի հանեալ որդւոցն»* (ԴԱՎ. 238)։ *Այսպէս «Նախապատւական կնքով, արքունի և հաստատ բանիւ», ոչ միայն ջնջեցին «հարիւր թուման ժողովուն», այլեւ ստացան «հրաման կաթողիկոսութեան Մովսէսի վարդապետին ըստ հաճոյական ամենայն ազգին Հայոց»* (ԴԱՎ. 239)։ *Այս կէտէն սկսելով կերպարանափոխ կ'ըլլայ Հայոց հայրապետութեան և կաթողիկոսութեան Մայրաթոռին վիճակը, և գրեթէ դարագլուխ մը կը կազմուի ազգային եկեղեցւոյ համար, և մենք այդ կէտերը կը վերապահենք պատմել Մովսէս Գ կաթողիկոսին անունին ներքեւ։*

**1649**. *Բայց տակաւին այդ գլուխին չանցած, յիշենք ինչ ինչ մասնաւոր տեղեկութիւններ, որք այդ միջոցին կը պատկանին, և որք ընդհանուր պարագայից հետ կապակցութիւն չունէին։ Էջմիածինի և Կոստանդնուպոլսոյ աթոռներն էին, որ իրարու յարակ-*

ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ ԵՒ ԱՂԹԱՄԱՐ

ցեալ դիպուածներով մեր մատդրութիւնը գրաւեցին, միւս աթոռներ անկախ և առանձնակ կեանք ունեցան։ Աղթամարի կաթողիկոս Գրիգորիս Սէֆէտինեան երկայնակեացը, որ 62 տարի պաշտօն վարած կ'ըսուի (§ 1556), ըստ տեղական աւանդութեան վախճանած է 1610'ին և իրեն յաջորդները եղած են Աբրահամ, Յովհաննէս, Ներսէս և Ստեփաննոս (ՕՕ ԲԻՁ. 1197)։ Սակայն Խիզանցի յիշատակագիր մը, 1626'ին Գրիգորիսի կաթողիկոսութեան ատեն գրած ըլլալը կը յիշատակէ (ԹՈՐ. Բ. 254), որ վերիվայր կ'ընէ Հաւաքարանի ժամանակագրութիւնը, բայց մենք պիտի չկարենանք հեղինակօրէն պարզաբանել նկատուած անհամաձայնութիւնը, քանի որ յատուկ ուսումնասիրութեան խնդիր մը պէտք է ըլլալ Աղթամարի կաթողիկոսներուն շարքը։ Ինչ որ կրնանք ըսել այս է, թէ կաթողիկոսը ըլլայ այսինչ կամ այնինչ անուն անձ մը, Աղթամարի աթոռը չներկայեր բարգաւաճ կացութիւն մը, թէպէտեւ անոր վիճակներու մէջ ալ կը յիշուին քանի մը ուսման հետեւող վարդապետներ։ Այսպէս են Սիմէոն Ապարանցի, Կարապետ Վարագցի, Յովհաննէս Խիզանցի, Յովհաննէս Ծաղկող, Կիրակոս Աւանցցի, Յովհաննէս Կրճօն, և Սահակ Վանեցի վարդապետներ, որոց մէջէն առաջինը և վերջինը աշակերտներ ալ հասուցած են (ՕՕ ԲԻՁ. 1197)։ Սոյն կարգին յիշենք նաև Մելքիսեդեկ Վժանեցի վարդապետը, զոր Մովսէս ուսուցչութեան հրաւիրեց Յովհաննավանքին դպրատունին մէջ (ԴԱՎ. 307)։ Այս վարդապետները ընդհանրապէս Աղթամարի սահմաններուն մէջ աստ և անդ հաստատուած, իրենց անհատական ջանքերով կը գործէին, իսկ աթոռը ոչ մի պայծառութիւն չունէր։ Աղթամարի վիճակներէն էին նաև Պօղոս Մոկացի (§ 1623) և Ներսէս Մոկացի (§ 1622) վարդապետներ, որոնք արդիւնաւոր եղան էջմիածինի վիճակներուն մէջ, Յիշենք այստեղ Յովհաննէս Ծարեցի վարդապետն ալ, թէպէտ ընիկ Սիւնեցի, որ իբր քարոզող ուսուցանող և յանդիմանող վարդապետ, իբր ընծայեցուցիչ և գրող մեծ արդիւնք ունեցաւ, և 1583 յունիս 20'ին վախճանելով մեծ համբաւ թողուց իր ետեւէն (ՍԱՄ. 192)։ Որովհետեւ Հայաստանի արդիւնաւոր վարդապետներուն անունները կը քաղենք, անգամ մըն ալ յիշենք Սրապիոն Եդեսացին, Սրապիոն Օձտեղացին, Սարգիս Պարոնտէրը և Կիրակոս Պոնտացին, որոց գործերը իրենց կարգին պատմեցինք։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ**

**1650.** Երուսաղէմի աթոռը այդ միջոցին իր սեփական և տեղական խնդիրներու շրջանակին մէջ ամփոփուած՝ յատուկ կեանք մը կ'անցընէր Գրիգոր Պարոնտէր պատրիարքին իշխանութեան ներքեւ, որ 32 տարի շարունակ բազմաշխատ և բազմարդիւն պաշտօնավարութիւն ունեցաւ Երուսաղէմի աթոռին վրայ, սկսելով 1613 թուականէն, երբ եպիսկոպոսական ձեռնադրութիւն ստացաւ Երուսաղէմի մէջ Աւետիս կաթողիկոսէն (§ 1606)։ Գրիգոր Պարոնտէրի անունը Երուսաղէմի պատրիարքներուն շարքին ամէնէն փայլուն անուններէն մէկն է, եթէ չուզենք ալ ամէնէն մեծն եղած ըսել։ Գրիգոր Կեսարացին նախատեսելով անոր վրայ այդ մեծ կարողութեան առհաւատչեան, տակաւին աբեղայ եղած ատենէն, յանձնած էր անոր Երուսաղէմի մատակարարութիւնը, երբ տուրքերուն վճարման համար նպաստ հաւաքելով Երուսաղէմ էր գացած (§ 1603)։ Պարոնտէր մինչեւ կեանքին վերջին շունչը չստեց իրեն վրայ դրուած ակնկալութիւնը, և իրաւամբ անոր յիշատակը անմոռաց է մինչեւ ցայսօր Երուսաղէմի մէջ, ուր հանապազօր կը յիշատակուի իր անունը պատարագի ատեն Գոհարբէյին քարոզին մէջ, որովհետեւ ըստ ամենայնի արժանաւոր եղած է այդ բացառիկ պատուոյն։ Երուսաղէմի սրբավայրերուն մէջ՝ ազգային ստացութիւններէն և իրաւունքներէն ամէնն ալ՝ թէ մահմետականներէն և թէ քրիստոնեաներէն խնդիրի և վէճի, վտարմանց և ձեռնձգութեանց առարկայ եղած են։ Ս. Յակոբեանց վանքն ալ, Ծննդեան այրն ալ, Համբարձման տեղն ալ, Պատանատեղւոյն մոմերն ալ, զատ զատ խնդիրներու նիւթ եղած են, բայց Պարոնտէրի աշխատութեամբ Հայոց իրաւունքները անեղծ են պահուած։ Ազգային վանքերու շինութիւններն ու նորոգութիւններն ալ մեծ վէճերու դուռ բա-

*ցած են, Լատիններ բիւրատեսակ զրպարտութիւններով ջանացած են աննկուն պատրիարքը տկարացնել, բայց ամէնուն դէմ միշտ զօրացած է Պարոնտէր իւր անխոնջ արիութեամբը, որոց մանրամասնութիւնները ուրիշներէ երկարօրէն պատմուած են* (ԱՍՏ. Ա. 279—333), *և մենք աւելորդ կը սեպենք կրկնել։ Այս մրցումներուն հետ Պարոնտէր կրցած է վանքին վրայ ծանրացող պարտքերը սրբել, երեսունէ աւելի նոր այգիներ գնել, եկեղեցական զարդերն ու սպասները ճոխացնել, բարոյական տեսակէտէն ալ վանական բարեկարգութիւնը պայծառացնել, միաբաններու թիւը աճեցնել, կարող վարդապետներու զարգացման նպաստել, որոց մէջ պէտք է առանձինն յիշուին Կարապետ Մոկացին, որ իւր կատարեալ աջակիցն էր* (ԱՍՏ. Ա. 330), *և Աստուածատուր Տարոնեցին, որ իրեն յաջորդեց* (ԲԱՌ. 54)։ *Նշանակելի էր նաև իւր առաքինական և ճգնողական կեանքը, հոգևական ջանքերով և քարոզչական արդիւնքներով մէկտեղ, և իրաւամբ տիպար անձնաւորութեան մը կնիքը փայլեցաւ իւր վրայ մինչև իւր մահը 1645'ին։ Գրիգորի կենսագրական պարագաներու մէջ կը յիշուի Կ-Պոլիս ալ գտնուած, և Գալաթու եկեղեցւոյն համար աշխատած ըլլալը* (ԱՍՏ. Ա. 306), *սակայն այդ պարագային թիւրիմացութեան հետևանք ըլլալը այլեւս ստուգուած է յայտնապէս* (11 ԱՐՍ. 15), *զի Գալաթու գործին հետ կապակցութիւն ունեցող Գրիգորը, Դարանաղեցին է եղած* (§ 1640)։ *Իրաւ Պարոնտէր Գրիգորը իւր պաշտօնին և իւր վարած դատերուն բերմամբ ստէպ մայրաքաղաքի հետ գործ ունեցաւ, և արքունի հրովարտակներ ալ ձեռք բերաւ, սակայն անձամբ Կ-Պոլիս եկած ըլլալը ստուգուած չէ, որով իւր անուանակից Կեսարացին, որ իւր բարեկամն ու պաշտպանն էր, իրեն գործակիցն եղած կ'ըլլայ հրովարտակներու ստացութեանց համար։*

**1651**. *Վերջին տարիներու նոր վկաներուն յիշատակութիւնները զանց ըրինք քիչ մը առենէ իվեր* (§ 1565), *թէ չգթայեալ դիպուածները չընդհատելու, և թէ անոնց թիւը շատ չըլլալուն համար, և այժմէն կու աք համառօտիւ քաղել եղածները։ Լոյս անուն 18 տարեկան Կաֆացի ազնուական երիտասարդ մը, ղօքան պատուանուն կրող, որուն համար երբեմն Պարոնլոյս և երբեմն ալ Լուսպարոն կը կոչուի, նախանձոտ Տաճիկներէ կը զրպարտուի, իբրև թէ Կէզլով քաղաքի մէջ իսլամացած և նորէն ետ դարձած ըլլայ, և Կաֆայի մէջ ատեան կը հանուի 1567 յունուար 5'ին։ Դատաւորը զրպարտութիւնը իմանալով ազատ կ'արձակէ, բայց քաղաքի իշխանին բռնութեամբ նորէն կը ձերբակալուի, և բանտարկութեանց և խոշտանգանաց կը մատնուի, խոստումներով և սպառնալիքներով կը փորձուի չորս ամիս շարունակ։ Մնողքը կ'աշխատին դրամով դատաւորն և իշխանը շահիլ, և մինչև Կոստանդնուպոլիս դիմում կ'ընեն, այլ չեն կրնար վիջուցանել Կաֆայի մոլեգնեալ ամբոխն ու մոլեռանդ իշխանները։ Երիտասարդն ալ ետ չկենար իւր հաւատքէն, և վերջապէս գլխատմամբ կը նահատակուի 1567 մայիս 15'ին, որ ճշդիւ կը պատահանէ յետ Համբարձման հինգշաբթին* (ՆՈՐ. 406)։ *Վրթանէս Կաֆայի եպիսկոպոս պատմած է նահատակին յիշատակը վկայաբանութիւնով և տաղերով* (ՆՈՐ. 408)։ *Օսմանեանց սուլտան Մուրատի օրով նորոգուած էր Պարսիկներու հետ պատերազմը* (§ 1570), *և աղուղողի ու բռնութեանց օրեր էին գաւառներու մէջ, զի կուսակալներ և դատաւորներ ուզածնին ընելու ազատութիւն գտած էին։ Ցաւուկ գրկումներու առիթ կ'ընծայէր ևս այն հրամանը, որով արգելուած էր իսլամ չեղողներուն խոյր կամ փակեղ գործածել* (ՍԱՄ. 176), *և պարտաւորեալ սևաւ գտակ պիտի դնէին գլուխնին* (ՆՈՐ. 414)։ *Այդ միջոցներուն Միջագետքի Թուրգուրան կամ Թլկուրան աւանը դատաւոր կը գտնուէր Մահմէտ, որ չափազանց տուրքեր կը ծանրացնէր քրիստոնեաներուն վրայ։ Ասոնք Օսմանեան զօրավարին դիմելով բերէն հատաց են հրաման առ փոփաւորն, թէ օրինական տուրքէն այլ աւելի մ' առնուր է փոխանէ* (ՆՈՐ. 416)։ *Ասոր վրայ Մահմէտ Տիարպէքիր գիմեց, մեծ դատաւորէն օժ գտնելու համար. Թուրգուրանի գլխաւորներն ալ հոն էն եկան, և երբ Մահմէտ*

**ՆՈՐ ՎԿԱՆԵՐ**

*ճարահատեցաւ, զրպարտութեան դիմեց, երկու ալ սուտ վկայ ճարեց, թէ «ասօ ըմէր ձէն եւ ըշտաբաղան հայհայեցին»: Անմիջապէս հրաման եղաւ բանտարկել և այրելով ըսպաննել Թուրգուրանցի տանուտէրները, որոնցմէ «օօն ըմբօնէօւր եղան, բայց ցասումը գլխաւորապէս երկուքին վրայ ծանրացաւ, Մարգարէ սարկաւագին և Շահրիման գիւղաւագին վրայ: Ուստի այս երկուքը զատեցին, և հրաւիրեցին ուրանալ որ ազատին: Իսկ անոնք զիրար քաջալերելով և բոլոր գիշեր սաղմոսելով յօժարակամ պատրաստուեցան նահատակութեան, և միւս առտուն խաչանշանօք և ձաղանօք կատարման տեղը տարուեցան, ուր բէօէօեցին ի ճոյոի ըօրօ և չյէօօ նօյօ, և ծօրծօւեցին ըհօօբն նաօբօլ, և այնպէս նահատակուեցան երկու երանելիները (ՆՈՐ. 417), 1580 սեպտեմբեր 6'ին (ՆՈՐ. 413): Ունինք նաեւ Կարնոյ եպիսկոպոս Յովհաննէս Դարանաղեցիի նահատակութիւնը 1592'ին, Կարնոյ մէջ կատարուած (ՉԱՄ. Գ. 516), որուն մանրամասնութիւնք կը պակսին: Նոյնպէս առանց մանրամասնութեանց յիշատակուած են Աբրահամ Ուռհայեցի քահանայի և Աքանտար կամ Աղեքսանդր Ուռհայեցի տանուտէրին գլխատմամբ նահատակութիւնները՝ 1600 յունուար 22'ին երեքշաբթի օր, Եդեսիոյ մէջ, ձէլալիներու գլխաւորներէն Ղարա Եազըճիի հրամանով (ՍԱՄ. 176):*

**1652.** *Շահաբասի վրայ խօսած ատեննիս առիթ ունեցանք յիշել թէ հակառակ կիրքերու և հակառակ*

**ՓԱՐԻԱՑԻՔ ԵՒ ԱՐՓԱՅԵՑԻՆ**

*ձիրքերու տէր անձ մըն էր, արդարասէր և բռնաւոր, անողորմ և գթած, լայնախոհ և կարճամիտ միանգամայն, և իրաւամբ հակասական գործեր կը պատմուին իր վրայ: Յիշեցինք եւս թէ ծպտեալ պտըտելու սովորութիւն ունէր, և այդ պարագաներուն մէջ թէ՛ վեհանձն և թէ՛ փոքրոգի գործեր կը կատարէր անխտիր: Դէպ եղաւ որ 1620'ին ծպտեալ կը պտտէր Փարիա և Բուրվարի գաւառներու Հայ գաղթականներուն մէջ: Այնտեղ Հայ կնոջմէ մը գանգատ կը լսէ թագաւորին դէմ, զիրենք իրենց հայրենիքէն հանելուն համար. Աւետիս քահանայի մըն ալ խլամութիւն առաջարկելով խիստ պատասխան մը կ'ընդունի: Սաստիկ զայրանալով, նոյնտեղ քահանային գլխուն կացինով կը զարնէ և անզգայ վիճակի մէջ թլփատել կու տայ: Եւ ոչ այսչափ միայն, այլ և սաստիկ հրաման կը հանէ յիշեալ գաւառներուն բոլոր Հայերը խլամացնել և թլփատել (ԴԱՎ. 124): Ասոր վրայ ամէն կողմ անողորմ գործադիրներ կը յղուին: Հայերէն մէկ մասը կը ցրուին ամայի լեռներ ու ձորեր, մէկ մասը յակամայից յանձնառու կը լինին, բայց չատերու վրայ բռնի կը գործադրուի թլփատութիւնը՝ խաչանգանքներու և հարուածներու ներքեւ կիսամահ վիճակի հասցնելէ ետքը: Նոյն բանին կ'ենթարկուի, Փահրան գիւղի տանուտէր Նուրիջանը, որ միայնակ կիրճի մը մէջ պահուըտելով, նեստաձգութեամբ արգելած էր իր գիւղը թլփատելու եկող պաշտօնեաները (ԴԱՎ. 125): Երբոր լուր կը բերեն Շահաբասի թէ հրամանը գործադրըուած է, թլփատեալ քահանաներու քառասունական ոչխար նուէր տալ կու տայ, և միանգամայն բազմաթիւ կարդացողներ կը ղրկէ, որ Փարիացի և Բուրվարեցի Հայերուն խլամ կրօնքը սորվեցնեն, սակայն Հայեր «ու ճնօղօնտրէին և բօնօվըճ լինէին, մինչեւ իսկ է մօլլայէօն չէրէօ և ըլըրօ օղանին», և այս չփոթ վիճակը տեւեց ղօմօ էրկօօ (ԴԱՎ. 126): Խղճալի կացութիւնը կը յուզէ Փարիայի Խոյիկան գիւղը բնակող Գրիգոր անուն անձ մը, բնիկ Վայոցձորի Արփա գիւղէն, մօրժօղն ղօրբէօհօօօլ և յօղբօնտօմ, օրտէօն օրէ, բօնէօւ և խէլօւ հօնծօրեղ, և հօօտօղը հօօտօտ և ջէրմօգօյն անձ մը, որ միտքը կը դնէ վերջ տալ այդ կացութեան, և զանազան գիւղերէն եօթն հոգի ալ մէկտեղ առնելով Սպահան կու գայ 1622'ին: Ամէն միջոց գործածելով, աղաչանք և կաշառք, պատճառաբանութիւն և կարեկցութիւն, իշխաններէն քանիներ կը շահի, անոնց միջնորդութեամբ Շահաբասի աղերսագիրներ և դիմումներ կը կրկնէ՝ հնգիցս և վեցիցս և աւելի, մինչեւ որ նախ բերանացի և յետոյ գրաւոր հրաման կը ստանայ որ Փարիա և Բուրվարի գաւառներու Հայերը հօմօրջօլ ղօշրէօցէն ըէրէօօնէօօբեան հօօտօն ինրէօնց (ԴԱՎ. 127): Գրիգոր Արփայեցի միանգամայն կը յաջողի եւս 1000*

թուման գումարը հաւաքել եւ վճարել, զոր իբր տուգանք պահանջած էր Շահաբաս՝ շնորհուած ազատութեան փոխարէն, և զոր ուրախութեամբ տուին Փարիացիներ եւ Բուրվարեցիներ, թէպէտ այդ երեւէն եղան չքաւորք և աղքատք կարի յոյժ։ Գրիգորի յաջողութիւնը գրգռեց Պարսիկներու թշնամութիւնը գրգռեց, որ մահմետական մը սպաննելով Գրիգորի պարտէզը թողուցին և ղայն իբրեւ սպանիչ ամբաստանեցին, և առեւան քաշելով ուրացութիւնը իբրեւ ազատութեան պայման առաջարկեցին։ Բայց արիասիրտ իշխանաւորը հաստատութեամբ մերժեց, և յօժարակամ յանձնառու եղաւ գլխատմամբ նահատակուիլ (ԴԱՎ. 128)։ Գրիգոր Արփայեցիի նահատակութիւնը մերձաւոր հաշուով յարմար է դնել միեւնոյն 1622 տարին (ՆՈՐ. 434)։

---

# Տ. ՄՈՎՍԷՍ Գ. ՏԱԹԵՒԱՑԻ 1629 - 1632

**ՄՈՎՍԷՍ ԿԱԹՈՂԻԿՈՍ**

**1653**. *Մայրաթոռին անտէրունջ և անիշխան վիճակը, կաթողիկոսի անունը կրողներուն տկարութիւնն ու խուսափիլը, և Մովսէսի շինարար գործունէութիւնը և հարիւր թուման տարեկանը ջնջելու անօրինակ յաջողութիւնը, այնպիսի բացառիկ պարագաներ էին, որ իրաւամբ Մովսէսը երկնառաք հրեշտակի մը պէս կը նկատուէր ամբողջ Հայութեան կողմէն, և այդ հանրային կարծիքին թարգմաններն էին Նոր-Ջուղայի և ուրիշ քաղաքներու իշխանաւորները, որոնք Շահսէֆիէ Մովսէսի կաթողիկոսացման համար արքունի հաւանութիւնը խնդրեցին և ստացան* (§ 1648)։ *Բայց կ'երեւի որ Մովսէս տակաւին կը վարանէր պաշտօնապէս անունն ու օծումը ընդունիլ, թէպէտ գործով կաթողիկոսութիւնը կը վարէր, և Մայրաթոռի ամէն տեսակ հոգածութիւնները կը կատարէր։ Որոշ կերպով չյիշեր պատմիչը թէ անձնական համեստութեան զգացումն էր, որ Մովսէսի վարանումին պատճառ կ'ըլլար, թէ ոչ կանոնական երկիւղածութիւն մըն էր, որ զինքն յետս կը կասեցնէր, երբ անդին երկու անձեր կային, որոնք կաթողիկոսութեան անունը կը կրէին, Դաւիթ Ատպահանի և Սահակ Վանի մէջ։ Որն և ըլլայ բուն շարժառիթը Մովսէս 1628 աշունին յաջողութեամբ Ասպահանէ էջմիածին դառնալով և ազգային կամքը գիտնալով և արքունական հաւանութիւնը ստացած ըլլալով ալ, տակաւին ժամանակ մը անցուց իւր վերջնական որոշումը և դիջողութիւնը յայտնելէ առաջ։ Այդ միջոցին կ'իյնան այն բողոքք ողբերանաց, զորս պատմիչին վկայութեան համեմատ, «որք եկեալ եկին, եկեղեցականք և աշխարհականք», տարիպաւ կը ղրկէին «ի Պարսկաստանոյ, ի Վրաստանոյ, ի Քրդաստանոյ, ի Հոռոմստանոյ, և յամենայն աշխարհաց, և խնդրէին ի սոցունց զի մի ևս զանգիտեսցեն յօժարեսցեն, այլ վասն հաստատութեան հաւատոյ եւ կարգի եկեղեցւոյ յանձն առցէ զկաթողիկոսութիւնն»* (ԴԱՎ. 239)։ *Այդ վերջին ակնարկները, թէպէտ քօղարկեալ ոճով, բայց յայտնի մտքով կը վկայէին, թէ եկեղեցին անտէր անտէրունջ էր, և այսպէս մնալ հնար չէր, պարագաներն ալ դժուարին էին, ուստի այդ կացութեան վերջ տալու կտրուկ միջոցը, պաշտօնապէս ընդունել և հռչակուելն էր, ինչ որ Մովսէս իրապէս և գործնականապէս կը կատարէր, և որուն համար պէտք եղած հաւանութիւնն ալ ստացուած էր տիրող կառավարութենէն։ Այդ պատճառաբանութիւնն է հարկաւ, որ վերջիվերջոյ Մովսէսի մտքին վրայ ալ ազդեց, և զիջաւ ընդհանուր թախանձանքին, և 1629 յունուար 13'ին, Ծննդեան ութօրէքին, երեքշաբթի օր, «օծմամբ ամենասուրբ Հոգւոյն Աստուծոյ օծաւ հայրապետ Ամենայն ազգին Հայոց»* (ԴԱՎ. 239)։ *Հարկաւ այդ առթիւ լիակատար կերպով գործադրուեցան բոլոր ծիսական և կանոնական պայմանները, որոնց ամէնէն նախանձախնդիր պաշտպանը՝ ինքն Մովսէսն էր, բայց մեզ չեն հասած մասնակցող 12 եպիսկոպոսներուն և անոնց երիցագոյնին անունները։*

*Նմանապէս ընտրութեան և օծման մասնակցող իշխանաւորներուն և բազմութեան մասին ալ որոշ տեղեկութիւններ չունինք։ Մովսէսի օծման թուականը* 1629 *յունուար* 13'*ին որոշ գրուած է Դաւրիժեցիէն, և նոյնութեամբ կրկնուած զանազան տեղեր* (ԴԱՎ. 338) *և համեմատուած ուրիշ թուականներու հետ, և հաստատուած Երեւանեցիէն* (ՋԱՄ. 20-21), *ուստի տարօրինակ կը թուի Ալիշանին զայն* 1630'*ին յետաձգելը* (ԱՐԱ. 231)։ *Անշուշտ այս բանին պատճառ տուած է Դաւրիժեցիին մէջ տեսնուած շփոթութիւնը, որով* 1629 *յունուար* 7'*ին կը դնէ Շահաբասի մահը* (ԴԱՎ. 237), 3'*ին Մովսէսի օծումը* (ԴԱՎ. 239), *և* 19'*ին Շահսէֆիի գահակալութիւնը* (ԴԱՎ. 237)։ *Սակայն այդ շփոթութիւնը ուղղելու համար աւելորդ էր Մովսէսի օծման թուականը փոփոխել, քանի որ արտաքին պատմագիրներու հետեւողութեամբ պէտք էր* 1628'*ին կանխել Շահաբասի մահը և Շահսէֆիի գահակալութիւնը, ինչպէս մենք ալ դիտել տուինք* (§ 1648)։

**1654**. *Մովսէս կաթողիկոսը իւր օծման թուականէն իբր գահակալ կը նկատենք, թէպէտեւ մենք ամէն առիթի մէջ գահակալի մը մեռնելէն կամ ժողովով մերժուելէն առաջ ուրիշ մը գահակալ ընդունելէ խորշած ենք։*

ԳԱՀԱԿԱԼԻ ԻՐԱՒՈՒՆՔ

*Այս պարագային մէջ ալ գիտենք, թէ Դաւիթ Դ Վաղարշապատեցին, որ վերջին գահակալն էր, տակաւին կենդանի էր Սպահանի մէջ, երբ Մովսէս կ'օծուէր Էջմիածին։ Գիտենք նաեւ թէ կանոնական ժողով մը չգումարուեցաւ Էջմիածինի մէջ, կանոնապէս Դաւիթը գահընկէց հրատարակելու և Մովսէսը գահակալ հռչակելու համար։ Սակայն բացառիկ պարագաներ բացառիկ դարման, և բացառիկ կնճիռներ բացառիկ լուծում կը պահանջեն, և այս հանգամանքը կը ճշմարտուէր այդ միջոցին։ Տարի մը ամբողջ անցեր էր, որ աթոռը տիրապէս անտէրունջ էր։ Անիկա որ բուն գահակալ կը նկատուէր, սկիզբէն իվեր կամկար ու ապիկար, շատոնցուընէ իվեր բոլոր ձեռնթափ, իննսնամեայ զառամեալ վիճակի մէջ, կ'ապրէր հեռաւոր Սպահանի մէջ, և կար իբրեւ թէ չկար, ոչ իրաւունքին տիրութիւն կ'ընէր և ոչ տիրութիւնը ընելու կարողութիւն ունէր։ Միւսն ալ՝ որ կաթողիկոսութեան իրաւունք էր առած փախըստական Մելքիսեդեկի կամքով միայն, ազգին ոչ մի բաժնին կողմէն ընդունելութիւն չէր գտած, ամէնէն մերժուած էր, և միայն արքունական հրամանին վրայ կը հիմնուէր։ Սա ալ իւրովի փախած ու ձեռնթափ եղած ըլլալէ զատ, իւր միակ ոյժն եղող արքունի հրամանն ալ կորուսած էր, Մովսէսին կաթողիկոսութեան Շահսէֆիէ հաստատուելովը։ Այս պարագաներ լուսաւոր կերպով կը հաստատեն թէ Մայրաթոռին նոր կազմակերպութիւն տալը անհրաժեշտ պահանջ էր, իսկական պարագաներէ առաջ եկած։ Միւս կողմէն դիւրութիւն և հնարաւորութիւն ալ չկար, զանազան երկիրներէ եպիսկոպոսներ և վարդապետներ եւ իշխանաւորներ հաւաքելով կանոնական ժողով կազմելու, և գահընկէցութիւն և գահակալութիւն վճռելու, և պէտք էր հնարաւոր եղած գործնական միջոցներով գոհանալ։ Պէտք եղած փաստերէն մէկն էր՝ կաթողիկոս կարծուողներուն գործնականապէս գահազուրկ նկատուիլը, և ընտրելի կաթողիկոսին գործնականապէս գահին տէր գտնուիլը։ Իսկ ժողովական որոշման տեղը կը բռնէր ընդհանուր կարծիքին առանց բացառութեան համամիտ և համակամ և համաձայն յայտնուիլը, ամէն կողմերէ գրաւոր դիմումներ հասնիլը, և ոչ մի կողմէ հակառակութիւն լսուիլը։ Այս պարագաները կշռադատելէ և ուսումնասիրելէ ետքը, մենք ալ վճռաբար կրնանք ըսել, որ եթէ ոչ նիւթապէս հաւաքուած ժողովով, ժողովական որոշման համահաւասար զօրութեամբ՝* ամենայն ազգ Հայոց, որք յԱրեւելս և յԱրեւմուտս կային, միաբանեցան միով և բանիւ, և արարին զՄովսէս վարդապետն կաթողիկոս, և հաստատեցին ի սուրբ աթոռն Էջմիածին (ԴԱՎ. 182)։ *Ահա թէ ինչու իւր օծման օրէն իբրեւ գահակալ կ'արձանագրենք Մովսէս Գ Տաթեւացի կաթողիկոսը։ Անոր մականունը ոմանք Սիւնեցի կը գրեն, հայրենական նահանգէն առնելով* (ԱՐԱ. 231), *ոմանք ալ Խոտանանցի գրեցին ծննդավայր գիւղէն առնելով* (ՉԱՄ. Բ. 233), *սակայն*

մենք կը պահենք Տաթեւացի կոչումը, իր առաջին գործունէութեան տեղէն առնուած, (§ 1615), որ ծխական կիրառութեամբ ալ նուիրագործուած (ԺԱՄ. 591) և ընդհանրացած է։

**ՍԱՀԱԿԻ ՃԱՐԺՈՒՄԸ**

**1655.** Սահակ Գառնեցին Երեւանէ և Մայրաթոռէ գաղտագողի փախչելով, Վան ապաւինելէն ետքը (§ 1647), ամբողջ 1628 տարին շրջելով անցուց այսր եւ անդր յաշխարհն եւ ի տեղիս, որ կային ընդ իշխանութեամբ Օսմանցւոց (ԴԱՎ. 183), բայց միշտ Վանի և Բաղէշի շրջակաները մնաց, առանց համարձակելու աւելի յառաջել, եւ ոչ ալ Կոստանդնուպոլիս երթալ մտաբերեց, ինչ որ կը ցուցնէ թէ լաւ ընդունելութեան չէր հանդիպեր և քաջալերութիւն չէր գտներ։ Եպիսկոպոսներէն և վարդապետներէն զոյգ ոմանս գտաւ իրեն հետեւող, մանաւոր չահերու ակընկալութեամբ կապուածներ, բայց կատարէք հոգւոյն չէին։ Սահակ երբ Մովսէսի օծուիլը լսեց, և դիմադրութեան գործակիցներ փնտռեց, մերժումի հանդիպեցաւ, միայն Պօղոս Այնթապցի՝ վարդապետ մը գտաւ իրեն օգնական, Յովհաննէս Այնթապցի Կիլիկիոյ կաթողիկոսին եղբօրորդին, որ է ըսել Մայրաթոռոյ հպատակութենէն դուրս մէկը։ Սա յանձնառու եղաւ Կ-Պոլիս երթալ և այնտեղէն հրովարտակ հանել, և Սահակի կաթողիկոսութիւնը ճանչցնել տալ։ Պէտք է նկատի առնել, թէ այս կերպով Սահակ Մայրաթոռի կաթողիկոսութեան կարծեցեալ իրաւունքը պաշտպանել չէր դիտեր, քանի որ Օսմանեան հրովարտակով Պարսկական կառավարութենէ ճանչցուած չէր ըլլար, այլ միայն նոր հերձուած մը պիտի ստեղծէր եկեղեցւոյ մէջ, Օսմանեան գաւառները Էջմիածնի աթոռէն զատելով, և նոր կաթողիկոսական աթոռ մը հաստատելով Գըլակայ Ս. Կարապետին մէջ, ուր միւռոն ալ պիտի օրհնէր, և պիտի խափանէր զհայրապետն և զիշխանութիւն սուրբ աթոռոյն Էջմիածնի (ԴԱՎ. 184)։ Զաքարիա Վանեցին, Մելքիսեդեկին և Խուլին գործակիցը, որ ժամանակին պատրիարքն էր (§ 1642), հաճութեամբ ընդունեցաւ Պօղոս Այնթապցի պատուիրակը, և հաւանեցաւ օգնել Սահակի միտքին, քանի որ Մովսէս կաթողիկոս Կեսարացիին աշակերտն ու բարեկամն էր (§ 1603), և ինքն պատրաստ էր որեւէ կերպով Կեսարացիին հակառակ բան մը ընել։ Պատրիարքի մը դժուար չէր կայսերութեան սահմանին մէջ եղող հոգեւոր պետերու համար հրովարտակներ ընդունիլ իր պատասխանատուութեամբ, ուստի Սահակի համար ալ պէտք եղած հրամանագիրը ստացուեցաւ սուլտան Մուրատ Դ'ի կառավարութենէն (ԴԱՎ. 183), միայն թէ մեծ եպարքոս Խուսրէվ փաշա 1629 յունիս 9'ին Կ-Պոլիսէ մեկնած էր Միջագետքի ապստամբ Քիւրտերուն և Պարսիկներուն դէմ պատերազմին պատճառաւ (ԺՈԻ. 225), և հրովարտակը առանց անոր հաւանութեան տրուած էր։ Երբոր Սահակ Վանի մէջ իւր զօր հոգւոյն համար Պօղոսը ճանպայ հանած էր, Վանայ գլխաւորներ, որոց մէջ յանուանէ կը յիշուին Ամիրխան Խանենց, Թումէ, Շիրաք, Միրաք, Փօլատ, և Սարուխան, եղածը լսելով՝ շատ աշխատեցան Սահակը ետ կեցնել իր միտքէն, զի զհնազանդութիւն և զհաւատարմութիւն թողցէ։ Մովսէսէ գրկուած Էջմիածինի նուիրակ Փիլիպպոս Աղբակեցի վարդապետն ալ իրենց հետ առնելով, Սահակի խոստացան որ Վանայ մօտ Գուրուպաշի Ս. Խաչ վանքը երթալ նստել իրեն յանձնեն, նուիրակն ալ առանձինն տարեկան 300 ղուրուշ վճարել խոստացաւ, որպէսզի եկեղեցւոյ մէջ նոր բաժանում և երկպառակութիւն չստեղծէ, բայց նա ոչ դարձաւ է զոր դեպստարութեանց խորհրդոյ նորայ, լսած ըլլալով իր պատուիրակին հրովարտակը բերելով ետ դառնալը (ԴԱՎ. 182)։

**ՍԱՀԱԿԻ ՁԱԽՈՂՈՒԼԸ**

**1656.** Սահակ Վանէն և Պօղոս Կ-Պոլսէն գալով, իրարու միացան Տիարպէքիրի մէջ, ուր էր Խուսրէվ մեծ եպարքոսը, որպէս զի ստացուած հրովարտակին գործադրութիւնը հրամայել տան։ Այս անգամ Տիարպէքիրի իշխանաւորներէն Երեմիա և Մաքսուտ, և Վանեցի Ռուհիջան, և քաղաքին առաջնորդը Բարսեղ Ամդեցի՝ Սրապիոնի աշակերտ և յաջորդը (§ 1584), ուրիշներով մէկտեղ սկսան Սահակէ խնդրել որ վտանգաւոր դիտումէն և Հայ եկեղեցւոյ մէջ հերձուած

ստեղծելէն ետ կենայ, և խոստացան որ ի թագաւորաց կամ ի խանորէից որում և համեցի՝ ինքեան լիցի ընծայ և զինճակօք, և նաւարակ Էջմիածնի մի մասն է նա, այլեւ տարին 500 ղուրուշ Թոշակ վճարուի Էջմիածինէ։ Նոյն ինքն Մովսէս կաթողիկոսէ և Փիլիպպոս Նուիրակէ ալ նամակներ հասան, թէ ուղղակի Սահակի գրուած և թէ բարեկամներու ուղղուած, Սահակը համոզելու համար։ Սակայն ամէն ճիգեր պարապի ելան, և Սահակ գրաւոր կերպով Խոսրէվի դիմեց հրովարտակին գործադրութիւնը պահանջելու, 10,000 ղուրուշ ալ տարուէ տարի տուրք խոստանալով։ Երբոր Բարսեղ եպիսկոպոս և իշխանաւորներ ալ մեծ եպարքոսին դիմեցին՝ Սահակի գործերն ու նպատակը բացատրելով, և ժողովուրդին գալիք վնասները ցուցնելով, Խոսրէվ կը պատասխանէ. Անէել Հայեր, ինչպէ՞ս մերժեմ, զի նոքա ի թագաւորն զ10,000 ղուրուշ յաւելան ի գանձանսն. որուն կը պատասխանէ Ռուհիջան, որ եթէ Հայոց ազգը կան գանձի կաճառէ, ես 20,000 ղուրուշ տամ (ԴԱՎ. 186)։ Նկատողութեան արժանի է, թէ ինչ սկզբունքով կը տրուին եղեր պետական որոշումները։ Երբոր Խոսրէվ որոշումը կը յետաձգէ, Ռուհիջան դիմել կու տայ եւս, թէ ինչ միտքով արդեօք Սահակ, առանց նախապէս իրեն դիմելու, ուղղակի Կ-Պոլիս դիմած է։ Խոսրէվ իրօք կը սրտմտի, և Սահակը առեան կոչելով կը սկսի յանդիմանել, թէ ինչո՞ւ զինքն անարգելով ուղղակի Թագաւորը ձանձրացնելու մարդ է ղրկած։ Իսկ երբ Սահակ գոհացուցիչ բացատրութիւն մը չկրնար տալ, կը հրամայէ ղրկողն ալ գացողն ալ դնել ի ֆալախա և բրածեծ առնել։ Հրամանը կը սկսի գործադրուիլ անողորմ և առաջին կերպով, և ըստ սովորութեան ուրացութիւնը կ'առաջարկուի իբրեւ ազատութեան պայման։ Այս անգամ գանգատաւորները վախնալով թէ Սահակ և Պօղոս կրնան տկարանալ, արծաթս բազում խոստանալով և ցրուելով, և միջնորդներ ճարելով, կը յաջողին որ Խոսրէվ հրամայէ երկուքն ալ արձակել ի տանջանաց, և ի բաց վարել ի դրանէ դիվանէն. և այսպէս հալածանելով և յաղելով դուրս կը հանուին։ Այս կերպով Սահակ և Պօղոս ոչ միայն նպատակնուն չհասան, այլ և ու համարձակէին ելանել ի մէջ մարդկան կամ ասելոյ (ԴԱՎ. 188)։ Սիմէոն Սեբաստացի՝ Կիլիկիոյ կաթողիկոս, իւր մէկ գրուածին մէջ Էջմիածնի կաթողիկոսները կը յանդիմանէ, թէ զՍահակ կաթողիկոսն և զՊօղոս վարդապետն տանջեցին տանջէ, և ազգի ազգի տանջանօք հալածոյն աքսորեցուցին (04 ԱՐՐ. 746), սակայն Դավրիժեցիին պատմութիւնը կը սուտէ անոր բանը, մանաւանդ թէ նոյն իսկ Էջմիածնի կողմնակիցները վտանգին առջեւն առնելու աշխատած են։ Նոյնպէս անտեղի է Նոր գրողի մըն ալ ըսելը, թէ եղբայրը կալաւելով Մովսէսի կողմնակիցներէն՝ բրածեծ եղբերկուսն ալ, տանջելով որ հասարակն ասացին, և թէ հալածել կալանաւոր աքսորեցան։ Զի ընդհակառակն Դավրիժեցիին պատմածին համեմատ, ուսկից Նոր գրողն ալ իւր ըսածները քաղել կը ցուցնէ (11 ԱՄՍ. 75), ազգին մէջ բաժանում և հերձուած ստեղծելու համար կաշառք խոստացողը ինքն Սահակն էր եղած, և իւր ազատութիւնն ալ իւր հակառակորդներուն միջնորդութեամբը ստացաւ։ Նոր գրողը այնպէս իմն կարծել կու տայ, իբր թէ Սահակի կաթողիկոսական իրաւունքը բռնաբարուած ըլլայ, մինչ այսպիսի իրաւունք մը չունէր Սահակ (§ 1654), և վերջին անգամ ալ հետապնդածը Մայրաթոռոյ գահակալութիւնը չէր, այլ Օսմանեան գաւառներուն մէջ, Կիլիկիոյ և Աղթամարի իրաւասութիւններէն դուրս մնացած մասերուն վրայ, հակաթոռ և բաժանեալ Նոր կաթողիկոսութիւն մըն ալ ստեղծել։ Այդ դիտումին հանդէպ ալ Վանի և Տիարպէքիրի ազգայնոց կողմէն եղած ընդդիմութիւնը, Սահակին ամէնէն մերժուած և ամէնէն անարգուած ըլլալուն յայտնի ապացուցութիւնն է, և անբացատրելի կը դառնայ վերոյիշեալ Նոր գրողին այսպիսի մէկու մը պաշտպանութիւնը ստանձնելը։ Սահակի արկածին պատմութիւնը փակելու համար աւելցնենք, թէ անոր իբր Թուական կրնանք նշանակել 1630'ին սկիզբը ձմեռնային ամիսները, երբ Խոսրէվ Տիարպէքիրի մէջ կը ձմերէր։

**1657**. Մովսէս Տաթեւացիի կաթողիկոսական գործունէութիւնը պատմելու մտած ատեննիս, պէտք է նախապէս յիշենք թէ Մայրատաճարին և Մայրաթոռին նիւթական և

բարոյական բարենորոգման և բարեկարգութեան մասին յիշուած ձեռնարկները, որոնք 1677 յունիս 25ին սկսան, և որոց մանրամասնութիւնները տուինք (§ 1645), հնար չէր որ մինչև 1629 յունուար 13 լրացած ըլլային, մանաւանդ որ միջանկեալ տարիուկէս ժամանակին մեծ մասը Սպահան անցուց 100 թուման տուրքը նորել և ջնջել տալու համար։ Հետևաբար անոնց շարունակութիւնը և լրումը կաթողիկոս օծուելէն ետքը կատարուած պիտի ընդունինք։ Այդ առթիւ գիտցաւ Մովսէս օգտուիլ այն մեծ խանդավառութենէն, որ ազգին մէջ բորբոքեցաւ իր կաթողիկոսանալուն պատճառով, և իր շուրջը գտնուող բազմաթիւ միաբանները և աշակերտները՝ նուիրակ ցրուեց ամէն կողմեր, որ նպաստներ հաւաքեն էջմիածինի նորոգութեան համար, որ նոր էր սկսեալ, կը շեշտէ Դավրիժեցին ալ (ԴԱՎ. 182), ինչպէս մենք ալ դիտել տուինք։ Եւ որովհետև ամէնքը միանգամ բացատրած ենք, կրկին վերադառնալ աւելորդ կը նկատենք։ Մովսէսի գործունէութեան մի մասը կը կազմեն նաև զարդարանական և զգեստաւորական և շքեղ փերանս ստանալու համար ըրած աշխատութիւնները և թափած ջանքերը, որք մեծ նշանակութիւն ունին Մայրաթոռին կալուածական և ստացական իրաւունքներուն համար, և զորս Երևանեցին մանրամասնօրէն կը քաղէ (ԶԱՄ. 22), այլ մեզ դժուար է այդ մանրամասնութեանց հետևիլ։ Բաւական ժամանակէ իվեր Մայրաթոռի մէջ տիրող անկարգութիւնները, մանաւանդ վերջի ժամանակներուն մէջ Դաւիթի և Մելքիսեդեկի և Սահակի անխորհուրդ վատնելը և գրաւի տալը, ազգային ստացութեանց մեծ մասը վտանգի ենթարկած էր, ուստի մանրազննին և խղճամիտ գործունէութեան պէտք կար, պատշաճ կերպերով և օրինական ձևերով անոնք ազատել, ապահովել և հաստատել վաւերական կալուածագիրերով։ Թէպէտ այդ մասին Մովսէսի յաջորդներն ալ գովանի փութաջանութիւն ունեցան, բայց անոնց սկզբնաւորութիւն տուած ըլլալու և ուղղութիւն հաստատած ըլլալու պարծանքը իրաւամբ Մովսէսի պիտի վերագրուի։

**ՄՈՎՍԷՍԻ ԳՈՐԾԵՐԸ**

**ՔԱՂՈՒԱԾ ՇԱՐԱԿԱՆՆԵՐԸ**

1658. Մովսէսի եկեղեցական բարեկարգութեանց կարգին կը յիշուի նաև թէ եկեղեցին պայծառացոյց յարմար և հաստատուն ճարտարութեամբ (ԴԱՎ. 210), որ կը ցուցնէ թէ հասարակաց աղօթից կարգաւորութեանց մէջ ալ Մովսէսէ հաստատուած կանոններու հետք մը պէտք է տեսնել։ Սակայն չենք ուզեր հետևցնել, թէ Մովսէս նոր կարգադրութիւններ աւելցնելու միտք ունեցած ըլլայ, այլ միայն խաթարեալ և խանգարեալ կարգերը խնամով իրենց նախնի դրութեան վերածելու աշխատած է։ Մէկ կարգադրութիւն մը միայն իրեն կը վերագրուի, այն է Օրհնութեան շարականներուն քաղուածը, որուն համար Խաչատուր Կեսարացի վարդապետ, Մովսէսի աշակերտն ու գործակիցը կը վկայէ, թէ սա ինքն սուրբ հայրս մեր առհասարակ գասն շարական տեղ Օրհնութեան, գըլխաւոր պատճառ ցուցնելով Ստեփանոս Սիւնիի պատրաստած տասը պատկերով Աւագ օրհնութիւնները։ Բայց որչափ ալ Խաչատուր Կեսարացի կը կրկնէ թէ սրբազան հայրս կանոնեաց (ԺՄԳ. 694), սակայն այդ կարգադրութիւնը Մովսէսի ինքնաստեղծ գիւտը եղած չէ, վասնզի անկէ առաջ Սարգիս Գառնեցի Մեծ-Անապատի մէջ սահմաներ էր ըսել Օրհնութիւն ըստ խորհրդոյ աւուրն, և ի վերայ քաղուածք շարականաց (ԴԱՎ. 196), որով Մովսէս անոր հետևողութեամբ ընդարձակած կ'ըլլայ Մեծ-Անապատին սովորութիւնը, ուր ինքն ալ միաբանած էր (§ 1620)։ Միայն թէ Մովսէս ալ քաղուածը իբր պարտաւորիչ չէ հրամայած, զի Խաչատուր Կեսարացին ալ կը գրէ. Եթէ հաճեսցեն կամք եղբայրութեան յերգս, Տեառն փոխարինեսցէ, և եթէ ուղափոխեսցէք՝ կամք յեր եղիցին (ԺՄԳ. 694)։ Մովսէսէն ետքն ալ նոր պատուէր մը չունինք քաղուածին մասին, այնպէս որ այժմ լոկ հնացեալ սովորութեամբ իբր պարտաւորիչ նկատուած է, մինչ պէտք էր զայն իբր կամաւոր հանդիսականութիւն կամ իբր բարեպաշտական յաւելուած նկատել Մովսէսի կարգադրութեամբ։

1659. Ինչինչ յարաբերութիւններ ալ կը վերագրուին Մովսէսի Հռոմի պապու-

թեան հետ, որոնց մեծ կարեւորութիւն կ'ընծայեն հռոմէադաւաններ՝ յօգուտ գործածելով անոր անունն ու հրաչակը: Զամչեանի անորոշ եւ անստուգելի աղբիւրներէ քաղած պատմութեան համեմատ, Մովսէս առաջին թուղթ մը գրած կ'ըլլայ 1629'ին իւր հայրապետութեան սկիզբը, դարձեալ [illegible] անկէ ետքը, որուն վրայ 1631'ին Պօղոս Փիրոմալլի (padre Paolo Piromalli) լատին Դոմինիկեան քահանայ մը կը ղըրկուի Ուրբանոս պապէն, որուն Մովսէս շատ մը լատինամիտ յայտարարութիւններ ըրած կ'ըլլայ, եւ որուն ձեռքը կը յանձնէ նոր թուղթ մը, 12 եպիսկոպոսներէ ալստորագրուած: Իբր թէ Փիրոմալլի այդ թուղթը կը տանի Նախիջեւանի Ունիթորներուն, եւ անկէ կը ղրկէ Հռոմ, եւ կրկին Էջմիածին դարձած ատենը, այլազգի իշխանին կողմէ կասկածաւոր կը նկատուի, կը գանակոծուի եւ կը բանտարկուի, եւ հազիւ 22 ամիս ետքը կրնայ ազատութիւն ստանալ (ՉԱՄ. Գ. 611): Մովսէսի 12 եպիսկոպոսներու հետ գրած վերջին թուղթը, որ Զամչեանի պատմութեամբ 1631'ին գրուած էր, ուրիշներ 1629'ին կը տանին (ՊԼՃ. 270), եւ Փիրոմալլիի գալուստը, որ Զամչեանէ 1631'ին դրըուած էր, ուրիշներ 1640'ին կը յետաձգեն (ԿԱԹ. 162): Իսկ գրչագիր մը, որ ժամանակակից է, 1628'ին կը դնէ հանդերձ երկոտասան եպիսկոպոսօք Մովսէսի նամակը (ՏԱՇ. 111), երբ Մովսէս դեռ կաթողիկոս չէր: Մովսէսի նամակներէն ոչ մի պատճէն յառաջ բերուած չէ, որ անոնց թիւն ու թուականը ու պարունակութիւնը ստուգէինք, իսկ իրարու հակառակ տեղեկատուներ օրինաւոր կասկածի իրաւունք կու տան ըսուածներուն ստուգութեան վրայ, կասկած մը որ աւելի եւս կը զօրանայ ազգային պատմիչներուն պահած լռութեամբը: Մելքիսեդեկի նամակներուն համար ըրած դիտողութիւննիս, թէ անոնք Մելքիսեդեկի արգելքի ներքեւ եղած ատեն Զաքարիայի ձեռքով կազմուած էին (§ 1608), հաւանական կը ցուցնէ, թէ կաթողիկոսներու անունները չհապարծող ուրիշ լատինամոլ գործիչներ եւս եղած են, երբ տեղերու հետաւորութիւններ եւ յարաբերութեանց դժուարութիւններ անհնար կ'ընէին որեւէ բաղդատական ստուգութիւն: Բայց առանց այս դիտողութեանց ալ, իրարմէ շատ տարբեր բաներ են, նամակի մը մէջ շռայլուած քաղաքավարի բացատրութիւններ, եւ հաւատոյ պաշտօնական դաւանութիւններ: Մովսէս իւր հայադաւան եկեղեցւոյ դրութիւնը բարձրացնելու եւ պայծառացնելու աշխատող մը, երբեք զայն ուրանալու կամ փոփոխելու միտքը չէ ունեցած, այլ եղած է միշտ ինչ որ էր, հայադաւան եկեղեցւոյ հաւատարիմ ախոյեան: Բայց կրցաւ Լատին աշխարհին բարեացակամութիւնը վնտռել, թէ իւր դիրքին ոյժ մը գտնալու յուսով, եւ թէ Եւրոպիոյ մէջ եղող Հայ գաղութներու դիրքը պաշտպանելու համար: Մովսէս կրնար ալ, Զամչեանի պատմածին համեմատ, Փիրոմալլիի յայտարարել թէ անխախտ պահեմ զմիաբանութիւն սիրոյ ընդ Աթոռոյն Հռոմայ (ՉԱՄ. Գ. 611), վասնզի Հայ եկեղեցւոյ սկզբունքով՝ սիրոյ միաբանութիւնը կը պահուի միւս եկեղեցիներու հետ, առանց անոնց դաւանութիւնը ամբողջաբար ընդգրկելու, բաւականանալով հիմնական կէտերու վրայ համաձայնութեամբ: Մովսէս կրնար եւս պապութեան հետ յարաբերութիւնները մշակել, Ուրբանոս Ը պապէն Արեւելցիներու համար բացուած դպրատունէն օգտուելու համար (ՉԱՄ. Բ. 24): Օտարազգի վարժարաններ դիմելը նպատակ ունի միայն ուսումնական զարգացումը, եւ ոչ թէ օտար դաւանութեան հետեւողութիւնը, բան մը որ մինչեւ մեր օրերն ալ կը ճշմարտուի:

**ԼԵՀԱՀԱՅՈՑ ՀԱՄԱՐ**

**1660.** Ուրիշ պարագայ մըն ալ կար, որ Մովսէսը կը ստիպէր Արեւմտեաններուն հետ յարաբերութեան մտնել: Գրիգոր Կեսարացի, իւր Կամենիցէ վտարուելէն (§ 1641) եւ Զաքարիա Վանեցիի պատրիարք ըլլալէն ետքը, Կեսարիա գացած էր, իւր սեփական վիճակը (§ 1642), եւ հոն լսած էր Մովսէս Տաթեւացիին՝ իւր նախկին ձեռնասունին (§ 1603) Մայրաթոռոյ կաթողիկոսութեան բարձրանալը: Այդ առթիւ Գրիգոր Մովսէսէն կը խնդրէր, որ, Բարձր հրամանաւ սուրբ

բարոյական բարենորոգման և բարեկարգութեան մասին յիշուած ձեռնարկները, որոնք 1677 յունիս 25'ին սկսան, և որոց մանրամասնութիւնները տուինք (§ 1645), հնար չէր որ մինչեւ 1629 յունուար 13 լրացած ըլլային, մանաւանդ որ միջանկեալ տարիուկէս ժամանակին մեծ մասը Սպահանի մնացուց 100 թուման տուրքը ներել և ջնջել տալու համար: Հետեւաբար անոնց շարունակութիւնը և լրումը կաթողիկոս օծուելէն ետքը կատարուած պիտի ընդունինք: Այդ առթիւ գիտցաւ Մովսէս օգտուիլ այն մեծ խանդավառութենէն, որ ազգին մէջ բորբոքեցաւ իր կաթողիկոսանալուն պատճառով, և իր շուրջը գտնուող բազմաթիւ միաբանները և աշակերտները՝ նուիրակ ցրուեց ամէն կողմեր, որ նպաստներ հաւաքեն Էջմիածինի նորոգութեան համար, որ նոր էր օծեալ, կը շեշտէ Դավրիժեցին ալ (ԴԱՎ. 182), ինչպէս մենք ալ դիտել տուինք: Եւ որովհետեւ ամէնքը միանգամ բացատրած ենք, կրկին վերադառնալ աւելորդ կը նկատենք: Մովսէսի գործունէութեան մի մասը կը կազմեն նաեւ ջերմեռանդական և ճշմարտաւորական և ըստ կրօնից ստանալու համար ըրած աշխատութիւնները և թափած ջանքերը, որք մեծ նշանակութիւն ունին Մայրաթոռին կալուածական և ստացական իրաւունքներուն համար, և զորս Երեւանեցին մանրամասնօրէն կը քաղէ (ՋԱՄ. 22), այլ մեզ դժուար է այդ մանրամասնութեանց հետեւիլ: Բաւական ժամանակէ իվեր Մայրաթոռի մէջ տիրող անկարգութիւնները, մանաւանդ վերջի ժամանակներուն մէջ Դաւիթի և Մելքիսեդեկի և Սահակի անխորհուրդ վատնելը և գրաւի տալը, ազգային ստացութեանց մեծ մասը վտանգի ենթարկած էր, ուստի մանրազննին և խղճամիտ գործունէութեան պէտք կար, պատշաճ կերպերով և օրինական ձեւերով անոնք ազատել, ապահովել և հաստատել վաւերական կալուածագիրերով: Թէպէտ այդ մասին Մովսէսի յաջորդներն ալ գովանի փութաջանութիւն ունեցան, բայց անոնց սկզբնաւորութիւն տուած ըլլալու և ուղղութիւն հաստատած ըլլալու պարծանքը իրաւամբ Մովսէսի պիտի վերագրուի:

**ՄՈՎՍԷՍԻ ԳՈՐԾԵՐԸ**

1658. Մովսէսի եկեղեցական բարեկարգութեանց կարգին կը յիշուի եւս թէ եկեղեցին պայծառացոյց յարմար և հաստատուն ճամաշարժութեամբ (ԴԱՎ. 210), որ կը ցուցնէ թէ հասարակաց աղօթից կարգաւորութեանց մէջ ալ Մովսէսէ հաստատուած կանոններու հետք մը պէտք է տեսնել: Սակայն չենք ուզեր հետեւցնել, թէ Մովսէս նոր կարգադրութիւններ աւելցնելու միտք ունեցած ըլլայ, այլ միայն խաթարեալ և խանգարեալ կարգերը խնամով իրենց նախնի դրութեան վերածելու աշխատած է: Մէկ կարգադրութիւն մը միայն իրեն կը վերագրուի, այն է Օրհնութեան շարականներուն քաղուածը, որուն համար Խաչատուր Կեսարացի վարդապետ, Մովսէսի աշակերտն ու գործակիցը կը վկայէ, թէ ոչ ինքն ասաց հայրս մեր սահմանեաց փոխն շարական ասել Օրհնութեան, գլխաւոր պատճառ ցուցնելով Ստեփանոս Սիւնիի պատրաստած տասը պատկերով Աւագ օրհնութիւնները: Բայց որչափ ալ Խաչատուր Կեսարացի կը կրկնէ թէ օրհնողն հայրս կանոնեաց (ԺՄԳ. 694), սակայն այդ կարգադրութիւնը Մովսէսի ինքնաստեղծ գիւտը եղած չէ, վասնզի անկէ առաջ Սարգիս Պարոնտէր Մեծ-Անապատի մէջ սահմաներ էր ըսել Օրհնութեան ըստ խորհրդոյ աւուրն, և ի վերայ քաղցրաձայն շարականաց (ԴԱՎ. 196), որով Մովսէս անոր հետեւողութեամբ ընդարձակած կ'ըլլայ Մեծ-Անապատին սովորութիւնը, ուր ինքն ալ միաբանած էր (§ 1620): Միայն թէ Մովսէս ալ քաղուածը իբր պարտաւորիչ չէ հրամայած, զի Խաչատուր Կեսարացին ալ կը գրէ. Եթէ հաճեսցին կամք եղբայրութեան ձերոյ, Տեառն օրհնութեան, և եթէ ոչ ախորժեսցեն՝ կամք ձեր եղիցին (ԺՄԳ. 694): Մովսէսէն ետքն ալ նոր պատուէր մը չունինք քաղուածին մասին, այնպէս որ այժմ լոկ հնացեալ սովորութեամբ իբր պարտաւորիչ նկատուած է, մինչ պէտք էր զայն իբր կամաւոր հանդիսականութիւն կամ իբր բարեպաշտական յաւելուած նկատել Մովսէսի կարգադրութեամբ:

**ՔԱՂՈՒԱԾ ՇԱՐԱԿԱՆՆԵՐԸ**

1659. Ինչինչ յարաբերութիւններ ալ կը վերագրուին Մովսէսի Հռոմի պապու-

թեան հետ, որոնց մեծ կարեւորութիւն կ'ընծայեն հռոմէադաւաններ՝ յօգուտ գործածելով անոր անունն ու հրաչակը։ Զամչեանի անորոշ և անստուգելի աղբիւրներէ քաղած պատմութեան համեմատ,

**ՀՌՈՄԻ ՀԵՏ**

Մովսէս առաջին թուղթ մը գրած կ'ըլլայ 1629'ին իւր հայրապետութեան սկիզբը, դարձեալ [illegible] անկէ ետքը, որուն վրայ 1631'ին Պօղոս Փիրոմալլի (padre Paolo Piromalli) լատին Դոմինիկեան քահանայ մը կը ղըրկուի Ուրբանոս պապէն, որուն Մովսէս չատ մը լատինամիտ յայտարարութիւններ ըրած կ'ըլլայ, և որուն ձեռքը կը յանձնէ նոր թուղթ մը, 12 եպիսկոպոսներէ ալ ստորագրուած։ Իբր թէ Փիրոմալլի այդ թուղթը կը տանի Նախիջեւանի Ունիթորներուն, և անկէ կը ղրկէ Հռոմ, և կրկին էջմիածին դարձած ատենը, այլազգի իշխանին կողմէ կասկածաւոր կը նկատուի, կը գանակոծուի և կը բանտարկուի, և հազիւ 22 ամիս ետքը կրնայ ազատութիւն ստանալ (ՉԱՄ. Գ. 611)։ Մովսէսի 12 եպիսկոպոսներու հետ գրած վերջին թուղթը, որ Զամչեանի պատմութեամբ 1631'ին գրուած էր, ուրիշներ 1629'ին կը տանին (ՊԼՃ. 270), և Փիրոմալլիի գալուստը, որ Զամչեանէ 1631'ին դըրուած էր, ուրիշներ 1640'ին կը յետաձգեն (ԿԱԹ. 162)։ Իսկ գրչագիր մը, որ ժամանակակից է, 1628'ին կը դնէ [illegible] Մովսէսի նամակը (ՏԱՇ. 111), երբ Մովսէս դեռ կաթողիկոս չէր։ Մովսէսի նամակներէն ոչ մի պատճէն յառաջ բերուած չէ, որ անոնց թիւն ու թուականը ու պարունակութիւնը ստուգէինք, իսկ իրարու հակառակ տեղեկատուներ օրինաւոր կասկածի իրաւունք կու տան ըսուածներուն ստուգութեան վրայ, կասկած մը որ աւելի եւս կը զօրանայ ազգային պատմիչներուն պահած լռութեամբը։ Մելքիսեդեկի նամակներուն համար ըրած դիտողութիւննիս, թէ անոնք Մելքիսեդեկի արգելքի ներքեւ եղած ատեն Զաքարիայի ձեռքով կազմուած էին (§ 1608), հաւանական կը ցուցնէ, թէ կաթողիկոսներու անունները չահագործող ուրիշ լատինամոլ գործիչներ եւս եղած են, երբ տեղերու հեռաւորութիւններ և յարաբերութեանց դժուարութիւններ անհնար կ'ընէին որեւէ բաղդատական ստուգութիւն։ Բայց առանց այս դիտողութեանց ալ, իրարմէ չատ տարբեր բաներ են, նամակի մը մէջ չռայլուած քաղաքավարի բացատրութիւններ, և հաւատոյ պաչտօնական դաւանութիւններ։ Մովսէս իւր հայադաւան եկեղեցւոյ դրութիւնը բարձրացնելու և պայծառացնելու աչխատող մը, երբեք զայն ուրանալու կամ փոփոխելու միտքը չէ ունեցած, այլ եղած է միչտ ինչ որ էր, հայադաւան եկեղեցւոյ հաւատարիմ ախոյեան։ Բայց կրցաւ Լատին աչխարհին բարեացակամութիւնը վաստկել, թէ իւր դիրքին ոյժ մը գտնալու յուսով, և թէ Եւրոպիոյ մէջ եղող Հայ գաղութներու դիրքը պաչտպանելու համար։ Մովսէս կրնար ալ, Զամչեանի պատմածին համեմատ, Փիրոմալլիի յայտարարել թէ [illegible] (ՉԱՄ. Գ. 611), վասնզի Հայ եկեղեցւոյ սկզբունքով՝ սիրոյ միաբանութիւնը կը պահուի միւս եկեղեցիներու հետ, առանց անոնց դաւանութիւնը ամբողջաբար ընդգրկելու, բաւականանալով հիմնական կէտերու վրայ համաձայնութեամբ։ Մովսէս կրնար եւս պապութեան հետ յարաբերութիւնները մչակել, Ուրբանոս Ը պապէն Արեւելցիներու համար բացուած դպրատունէն օգտուելու համար (ՉԱՄ. Բ. 24)։ Օտարազգի վարժարաններ դիմելը նպատակ ունի միայն ուսումնական զարգացումը, և ոչ թէ օտար դաւանութեան հետեւողութիւնը, բան մը որ մինչեւ մեր օրերն ալ կը ճչմարտուի։

1660. Ուրիչ պարագայ մըն ալ կար, որ Մովսէսը կը ստիպէր Արեւմտեաններուն հետ յարաբերութեան

**ԼԵՀԱՀԱՅՈՑ ՀԱՄԱՐ**

մտնել։ Գրիգոր Կեսարացի, իր Կամենիցէ վտարուելէն (§ 1641) և Զաքարիա Վանեցիի պատրիարք ըլլալէն ետքը, Կեսարիա գացած էր, իւր սեփական վիճակը (§ 1642), և հոն լսած էր Մովսէս Տաթեւացիին՝ իւր նախկին ձեռնասունին (§ 1603) Մայրաթոռոյ կաթողիկոսութեան բարձրանալը։ Այդ առթիւ Գրիգոր Մովսէսէն կը խնդրէր, որ, [illegible]

էջմիածնի և կաթողիկոսական իշխանութեամբ (ԴԱՎ. 284) Նիկոլը բանադրէ, զի Նոր պարագայ մը վրայ եկած էր, որ Կեսարացին կաթողիկոսական բանադրանքի մըն ալ պէտքը կը զգար, իր արձակած բանադրանքին վրայ (§ 1641)։ Որչափ ալ Նիկոլ կարեւորութիւն չէր տուած Կեսարացիի բանադրանքին, սակայն իր ժողովուրդին զգածուելուն, և իրմէ զգուշանալուն վրայ, կը ստիպուէր ու կը պատրաստուէր անոնք շահելու համար 3000 ղուրուշ ժողովուրդէն ճանապարհածախս առնալով, Իլվովէ մեկնիլ, Կոստանդնուպոլիս և անկէ Կեսարիա երթալու համար, որ փոյթ մեղայ և առցէ արձակումն Կեսարացիէն։ Բայց Պրուսա հասած ատեն կը հանդիպի Արիստակէս Թարբերդցի վարդապետին, որ Կեսարացիին դէմ բարկացած էր, անոր փոխանորդներուն իրեն դէմ հանած հալածանքին համար (§ 1640), և Նիկոլը կը համոզէ թէ պէտք չունի Կեսարացիին երթալ, և թէ ինքն ալ կրնայ արձակել, որով Նիկոլ կը հաւանէր չերթալ, այլ միայն թուղթով արձակում կը խնդրէր, պատճառելով թէ տօթէն հիւանդացայ և անկեալ կամ ի մահիճս։ Կեսարացին կը հաւատայ, կը խղճայ, կը գրէ թուղթ արձակման և օրհնութեան, և կը ղրկէ Պրուսա, և Նիկոլ զայն առնելով կը դառնայ Իլվով, ուր Իլվովցիք գիրը տեսնելով, ուրախացան և զարմացան ընդ եղելոյն (ԴԱՎ. 205)։ Մինչ այս մինչ այն Կեսարացին լուր կ'առնէ, թէ խաբկանօք խլած է իրմէ արձակման թուղթը, ուստի խկոյն կը փութայ նզովքը նորոգել և Իլվովցիներու ալ կը գրէ, թէ առաջին նզովն և բանադրանքն կայ ի վերայ այդր եղելոյն (ԴԱՎ. 286)։ Ահա այդ առթիւ է որ աւելի հաստատութեան համար Մովսէսէ ալ կը խնդրէ կաթողիկոսական իշխանութեամբ Նիկոլը բանադրել։ Իրօք ալ Մովսէս՝ վստահ իր նախկին վարդապետին վրայ, և համամիտ անոր ուղղութեան, խակոյն գրեաց գիր բանադրանաց և առաքեաց ի վերայ Նիկոլ եղելոյն (ԴԱՎ. 284)։ Մովսէսի բանադրանքը կ'արձակուէր 1629'ին, որ պապին ալ գրուած նամակին թուականը կը ցուցնէ (§ 1659), և այդ զուգադիպութիւնը կը բաւէ բացատրել թէ ինչ կրնար ըլլալ Մովսէսի նպատակը, եթէ իրօք գրած է այն նամակը, որուն մասին ստոյգ և վաւերական տեղեկութիւններ կը պակսին։ Մովսէսը ուզած է իր իշխանութիւնը պահել Արեւմուտք գտնուող Հայերուն վրայ, և ոչ թէ ինքզինքը հպատակեցնել Արեւմուտքի պապութեան ներքեւ։ Որովհետեւ Մովսէսի բանադրանաց գիրին ետեւէն, Լեհաստան կը ղրկէր Խաչատուր Կեսարացի վարդապետը, և քանի որ Նիկոլ կը յանդգնէր կաթողիկոսական վճիռն ալ անարգել, Մովսէս պաշտօն կու տար Նուիրակին ընկենուլ զՆիկոլ ի պաշտամանէ (ԲՈՆ. 155), և Գրիգոր Կեսարացին ալ Նուիրակը կը զգուշացնէր, որ մի փոյթ իցէ ընկալցի զՆիկոլն ի կարգս և ի պատիւ եպիսկոպոսութեան (ԴԱՎ. 286)։ Իլվովցիք բացարձակապէս դէմ դարձած էին Նիկոլի, և ոչ միայն իրմէ կը խորշէին, այլ և խորհէին դատաւորքն դնել զնա ի բանտի, և հանել ի նմանէ զաստիճան արքեպիսկոպոսութեան (ԲՈՆ. 22)։ Խաչատուր վարդապետն ալ, թէպէտ այր հեզ և հանդարտ և խաղաղաբարոյ (ԴԱՎ. 286), սակայն չկարենալով տանիլ Նիկոլի նախատինքներուն և կաթողիկոսական հրամաններու դէմ ըմբոստանալուն, ինքն ալ անէծքը կը կրկնէր, որուն վրայ քաղաքին դատաւորներ եկեղեցին կը փակէին և դատաստանի կը նստէին Նիկոլը դատելու Նուիրակին նախագահութեամբ։ Խաչատուր խնդիրին դայրանալը տեսնալով, հաշտելու և հաշտեցնելու միջոցներ կը փնտռէր, բայց դատաւորներ անողոք կը մնային, և երբ Նիկոլ կը սպառնար արքունի դատարանի դիմել, Հայազգիներ կը պնդէին, թէ իրենց իրաւունք տրուած է, որ իրենց գործերուն Հայոց ազգէն դատաւորքն արասցեն զդատաստանն, և ոչ թէ դատաւորք ազգին Ֆռանկաց։ Նուիրակը սրտապնդելու համար ալ կ'աւելցնէին, այլ և անէծք ազգանք ընդ ազգանաց նոցա, և խելք ընդ խելաց նոցա, և դու զի՞ ես երկնչիս (ԴԱՎ. 289)։ Այսպէս կը շարունակէր վէճը, զի ոչ Նիկոլ կը հպատակէր, և ոչ ալ ազգայինք կը զիջանէին։

**1661**. Նիկոլ տեսնելով որ ազգային կանոններով և ազգային դատաստաններով պիտի չկարենայ ժողովուրդը յաղթահարել կամ ինքն արդարանալ, դաւանափոխութեան միջոցին կը դիմէ, որպէսզի Լեհաց արքունական և Լատինաց կրօնական զօրութեամբ

իւր հակառակորդները ընկճէ։ Այս նպատակով կը դիմէ — այնոսիկ որ ի կարգէն Եզվայիթայ կան ի մէջ ժողովքին Նիկոլայ, ինչպէս Դավրիժեցին կը գրէ (ԴԱՎ. 289), ամէն լատին կրօնաւորները

**ՆԻԿՈԼ ԿԱԹՈԼԻԿ**

Եզվայիթ, կամ Ճիզվիթ (Gesuita) կամ Յիսուսեան միաբան նկատելով, մինչ լատին պատմիչներ կը ճշդեն թէ դիմեց յեկեղեցին Հայոց Կարմելիտեանց Բոկոտնից (ԲՈՆ. 22), և հրապարակաւ հռոմէադաւանութիւն ընդունեցաւ, յայտարարելով թէ մտի ի հնազանդութիւն պապին Հռովմայ հետեւելով ի մօտ, կատարել զամենայն հրամանս որ գայ ի նմանէ (ԴԱՎ. 289)։ Այսպէս 1630'ին Նիկոլ եպիսկոպոսն Լեհաց՝ մտաւ ընդ հնազանդութիւն, ինչպէս կը գրէ ժամանակագիր մը (ՍԱՄ. 178), և այս է հռոմէադաւանութիւն ընդունելու իսկական և պաշտօնական առաջին գործողութիւնը, զոր կատարեց Նիկոլ Թորոսովիչ, կաշառքով և գաղտնի ձեռնադրուած Իլվովի եպիսկոպոսը (§ 1638), և այս է իսկապէս կաթոլիկ կամ հռոմէադաւան ըլլալու ձեւը, և ոչ թէ վարդապետական բացատրութիւնները, որով կը կարծեն իրենց համամիտներ շատցնել հռոմէադաւան գրողներ։ Նիկոլ ազատ էր ինքն իրեն համար ուզած դաւանութեան յարիլ, այլ Իլվովի ժողովուրդն ալ իրեն հետեւող յայտարարելու իրաւունք չունէր։ Նոյն առաւել Իլվովի լատին արքեպիսկոպոսարանը իրաւունք չունէր Հայերը բռնադրելու որ Նիկոլի հետեւին հնազանդելին, և նոյն քանդելու անիրաւ էր Լեհաց արքունի իշխանութիւնը, որ զինուորական ոյժ գործածեց Հայերը իրեն դաւանութեան՝ հպատակեցնելու, և հրաման տուաւ իւր պաշտօնեաներուն, որ հարկաւ խորտակեսցեն զդուռն եկեղեցւոյն, զոր Հայեր չէին բանար Նիկոլի առջեւ, և զՆիկոլ եպիսկոպոսն մտուցեն յեկեղեցին, և ի նա յանձնեսցեն զեկեղեցին ամենայն ընչիւք։ Եկեղեցւոյ թանգարանին մէջ կային հազարէ աւելի գիրքեր հարուստ կողքերով և ոսկեթելի կազմերով, և եկեղեցական զարդեր և սպասներ և զգեստներ, ի հարց և ի հասարակաց, ի ժողովոյ և ի նախնի թագաւորաց նուիրուած, նաև և վաւերական մուրհակք և նամակք։ Այս կերպով ազգային ինչք և ստացուածք, իրաւունք և սեփականութիւնք միանգամայն ոտնակոխ կ'ըլլային, և ամբողջ ժողովուրդը լատինական սկզբունքով և զօրութեամբ բռնական հարստահարութեան կ'ենթարկուէր։ Այս է հռոմէադաւանութեան կողմէ հռչակուած մեծ յաղթանակը։ Հռոմէադաւաններ սովոր են ասկէ առաջ ալ կատարուած եղելութեանց և Լեհաստանի Հայերուն ընթացքին մէջ Հայերուն հռոմէադաւանութեան յարած ըլլալուն փաստերը տեսնել, սակայն Նիկոլի և Իլվովի գործերը բաւական են անգամ մըն ալ հաստատել մեր պնդածը, թէ Հայեր, ուրիշ դաւանութեանց հետ հաշտ ապրելով ալ, երբեք իրենց հայրենական հայադաւան եկեղեցիէն օտարացած չէին և չեն։ Լեհաց կրօնական և պետական իշխանութիւններ ձեռք ձեռքի տուած, կը հետապնդէին երիցանց և իշխանաց Հայոց, և Նիկոլին չհամակերպողները իշխանական բռնութեամբ, կ'ենթարկէին ի բանտս և ի տուգանս, և այսպէս կը կազմէին Լեհաստանի Հայերուն վրայ հռոմէականներուն տարած կարծեցեալ յաղթանակին դրուագը։ Նիկոլ կրցաւ բռնութեամբ տիրանալ բոլոր եկեղեցիներուն և վանքերուն, բայց չկրցաւ տիրանալ ժողովուրդին, զի նոյնիսկ Լատին պատմագիրին վկայութեամբ, ի բաց կացին ի նմանէ ժողովուրդն ամենայն, բաց ի միոյ կամ յերկուց տանուտէրց, և ոմանց ազգականաց Նիկոլին ազգակցաց (ԲՈՆ. 156)։ Իսկ ուրիշ Լատին մը, միակ Արսէն քահանայի մը անունը կու տայ իբրեւ Նիկոլի հետեւող (ԲՈՆ. 23)։

**ՆԻԿՈԼԻ ԲՌՆՈՒԹԻՒՆՆԵՐ**

**1662.** Խաչատուր Կեսարացի նուիրակ, բնական բերմամբ պայքարելէ հեռու անձ մը, երբոր տեսաւ Նիկոլի ընթացքը և պետական բռնութեամբ զեղծանիլը, մեծապէս վշտացաւ, զմազն և զմօրուսն իւր ճողէր (ԿԱՄ. 210), շուտով Ս. Խաչի վանքը քաշուեցաւ, ուր յանկարծ կառավարութենէն պաշարուեցաւ իբրեւ լրտես։ Նիկոլ պաշտպանելու ձեւեր կ'առնէ յուսալով որ կարենայ զայն իրեն յանկուցանել, սակայն չյաջողիր, և Խաչատուր ալ կը համոզուի, որ Նիկոլը ճամբայ բերելու համար ջանքերն ալ զուր աշխատանք և ի նանիր վաստակ կը դառնային։ Լեհացիք ուզելով որ առաջ Խաչատուրը հեռացնել, յա- [illegible]

[illegible], որով 1631 տարեգլխին կը թողու Խաչատուր Լեհաստանը և ուղիղ Էջմիածին կու գայ, և իրաց վիճակը կը ներկայացնէ կաթողիկոսին ու եպիսկոպոսներուն, որոնք [illegible] (ԴԱՎ. 291)։ Արդ, եթէ Մովսէս կանուխէն հռոմէադաւանութեան յարած մէկն էր, ինչպէս հռոմէականք կը կեղծեն, ընդհակառակն ուրախութիւն պէտք էր զգացած ըլլար, և ոչ սուգ ու տրտմութիւն։ Երբոր նուիրակն ալ հեռացաւ, Նիկոլ ա՛լ աւելի համարձակութեամբ իր բռնութեանց ասպարէզ գրտաւ, և այնպիսի գործերու ձեռնարկեց, որ կը յիշեցնէին [illegible], զոր կը կրէին քրիստոնեայք [illegible]։ Քահանաներն ու գլխաւորները [illegible], և 300 կամ 400 ղուրուշ տուգանքով կ՚արձակէր. մեռել թաղելու և վրան քար ձգելու արգելք կը դնէր՝ և հազիւ թէ մեծ գումարներով կը ներէր. մկրտութիւն և պսակ չէր ներեր, եթէ հռոմէականութիւն չընդունէին, կամ եթէ ծանր տուգանք չի վճարէին, ուստի գաղտնի ուրիշ քաղաքներու մէջ ընել կը պարտաւորուէին. մեռելներ օրերով անթաղ կը մնային, և փայտէ դագաղի մէջ կպրաձիւթով ծածկուած ցուրտ տեղեր երկար ատեն կը պահուէին (ԴԱՎ. 292), 15 և 16 տարեկան անկնունքներ կը գտնուէին, չատ տղայք անկնունք կը մեռնէին, և հոգեվարներ առանց հաղորդութեան կը վախճանէին։ Իլվովցիք կը պնդէին իրենց վայելած արտօնութիւններուն վրայ. [illegible], ուստի մասնաւոր տուն մը եկեղեցիի վերածեցին, և Նիկոլէ գրաւուած եկեղեցիներէ մին ետ դարձուիլը պահանջեցին, որ Սիգիսմոնդոս Գ՚ի օրով գլացուեցաւ (ԲՈՒ. ԺԸ), և երբ Վլատիսլաւ Է՚է հրամայուեցաւ (ԲՈՒ. 158), Նիկոլ անոր ալ ուզեց դիմադրել, [illegible], կը կարծէ Լատին պատմիչը (ԲՈՒ. 23)։ Բայց թագաւորը [illegible] ետ կեցաւ, կ՚ըսէ, և այլեւս չուզեց [illegible] (ԲՈՒ. 24)։ Նիկոլի պատճառաբանութիւնը եղած էր, [illegible] (ԲՈՒ. 24)։ Կ՚երեւի թէ կաթոլիկութիւնը կը ներէ եղեր իր իսկ ժողովուրդը կեղեքել, անիրաւի խոչտանգել, և հաւատքին չներած բանծը՝ դրամի փոխարինութեամբ ներել։

ՆԻԿՈԼ ԵՒ ԽՈՒԼԸ

**1663**. Իլվովցիք կանխած էին պատուիրակ յղել Մովսէս կաթողիկոսին, Սիմոն անուն քահանայ մը և երեւելի աշխարհական մը (ԴԱՎ. 293), որովհետեւ Խաչատուր նուիրակին Էջմիածին դառնալէն ետքը ձայն մը չէր ելած։ Պատուիրակներուն ձեռքը տրուած նամակը 1631 յուլիս 25 թուական կը կրէ (ԲՈՒ. ԺԵ), ուր կը նկարագրեն Նիկոլի գործած բռնութիւնները, ինչպէս վերեւ յիշեցինք. քահանայից գանակոծութիւններն ու բանտարկութիւնները և բռնադատեալ դաւանափոխութիւնները, տեղական իշխանութեանց կողմէն գտած պաշտպանութիւնը, և գոնէ եկեղեցի մը իրենց թողլու համար ըրած խնդիրներուն գլացումի հանդիպիլը, այն սկզբունքով թէ [illegible] (ԲՈՒ. ԺԸ)։ Այդ գրութեան մէջ Նիկոլ, չարունակ [illegible] անուններով կը յիշուի, որ ժողովուրդին ներքին զգացումը կ՚արտայայտէ։ Ահա այդ պարագան էր, որ Մովսէսը ստիպեց գրել [illegible], առ թագաւորն Լեհաց [illegible] (ԴԱՎ. 293)։ Մովսէսի նամակներուն նպատակը, ոչ հպատակութիւն յայտնել էր, և ոչ հռոմէադաւան սկզբունքներու հաւանութիւն տալ, ինչպէս հռոմէականներ կը սիրեն մեկնել (§ 1650), այլ նա ողոք լեզուով և չահեցողական ոճով կը խնդրէր, [illegible] (ԴԱՎ. 294)։ Այս նամակներուն վրայ տրուած է Վլատիսլաւ Է՚ի հրամանը, եկեղեցիներէն գոնէ մէկը հայադաւաններուն թողլու, ինչպէս յիշեցինք (1662). իսկ նամակին մէջ յիշուած եկեղեցի մը տալու գլացումը, տեղի ունեցած էր Վլատիսլաւի նախորդին Սիգիսմոնդոս Գ՚ի օրով, որուն մահը հանդիպած է 1632՚ին սկիզբները։ Ճիշդ

այդ միջոցին կը համընկնի Յովհաննէս Խուլի Լեհաստան գտնուիլը (§ 1642)։ Կ-Պոլսոյ մեկնելուն ճիշդ թուականը չենք գտներ, բայց գրուած է թէ 1631'ին անցաւ ընդ Լեհաստան, 1631 դեկտեմբեր 1'ին Իլվովի մէջ կ'աւարտէ ընդօրինակութիւն մը, և 1632 ապրիլ 18'ին այնտեղ կը գտնուի Սիգիսմոնդոսի մահուան օրը (11 ԱՄՍ.18), որ ըսել է, թէ ճիշդ Նիկոլեան տարօրինակ գործունէութեան օրերուն ներկայ եղած է Լեհաստանի մէջ, թէպէտեւ ոչ Դավրիժեցին և ոչ Լատին պատմիչներ անոր անունը չեն տար իրենց յիշատակներուն մէջ։ Խուլին ուղղութիւնը ծանօթ ըլլալով իւր նախընթաց գործերէն, և մանաւանդ իւր առաջիկային բռնած ընթացքէն, պէտք է ընդունիլ թէ քաջալերիչ եղած է Նիկոլի տարադէպ և անճահ գործերուն, մինչ իւր 78 տարեկան հասակը, և ժողովուրդի հոգով զբաղած անցեալը, պէտք էր իրեն թելադրէին խաղաղութեան և հաշտութեան միջնորդ ըլլալ, և մոլեռանդ Նիկոլի ապօրինի բռնութեանց առջեւն առնել։ Նախկին պատրիարք և ծերունի եպիսկոպոս մը չէր կրնար իբր անծանօթ մնալ քաղաքի մը մէջ, ուր իբր երկու տարի առեն անցուցած է․ ուստի անոր անունին չուրջը Դավրիժեցիին պահած լռութիւնը, իբր անարգական զանցառութեան նշանակ պէտք կ'ըլլայ մեկնել, և չենք գիտեր ինչ մեկնութիւն տալ Լատին պատմիչներուն ալ պահած լռութեան, բայց եթէ Խուլին կարեւորութիւն և նշանակութիւն չվերագրելնուն։ Ասիկայ յայտնապէս կը հետեւի Իլվովցի Հայ քահանայի մը գրածէն, թէ Խուլղարբէօրէըն Սթամբօլտէ, զոր մեր մեզին եքեր քուլքըն Լոզի,. ընկեց ղըրէնըն Լ.........րդէ, և ֆօմէր ղըօրծըն Նէկոլէ, և յոր տեղ նաթէր ըՀայօ հօյհօյէր։ Թէպէտ կ'ըսէ թէ Լեհաց եկեղեցականներէն և իշխաններէն, նոյնիսկ թագաւորէն և թագուհիէն պատիւներ տեսաւ, սակայն այսու հանդերձ Լատին պատմիչներուն լռութիւն պահելը, կը հաստատէ մեր տուած մեկնութիւնը։ Խուլին զգացումներուն ինչ ըլլալը ճշդելու համար, չատ որոշիչ են իւր իսկ խօսքերը։ Երբոր Հայեր իրեն կ'ըսեն․ Մէօ էմ Լ.........րդէ, հնազանդ մեր կաթողիկոսէ, ինքը սովոր է եղեր պատասխանել․ Կաթողիկոսն օլ է, էմ պաթխա թան ըն մըծ է, ամըն Հայոց ալչխաբըն էռ է (11 ԱՄՍ. 20-21)։

**1664.** Կաթողիկոսի մասին Խուլին ըսածը կը հաստատէ, թէ Մովսէս ոչ համամիտ էր համէջական դաւանութեան և ոչ կամակից հռոմէական գործունէութեան, մինչ անոր պայլին

**ՄՈՎՍԷՍԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

գրած նամակին զօրութեամբ բոլոր համէջական գրողներ, Զամչեան, Պալճեան, Ըստկարեան, Ազարեան, Գալէմքեարեան և ընկերք՝ կը սիրեն կարծել, թէ Մովսէս ողղաֆաւամօփ, իրենց միտքով՝ լատինամիտ էր, և Թօրօսէանին Նէկոլէ ըրածներուն հաւան (ԸՍՏ. 380)։ Բայց բոլորովին ուրիշ նպատակով գրուած էր Մովսէսի նամակը, ինչպէս վերեւ յիշեցինք, այսինքն Լեհաստանի հայադաւանները չնեղելու համար։ Այդ գիրը տարբեր միտքի տանիլը՝ դիւրաւ կ'ըմբռնենք Սիմէոն Սեբաստացիին գրչին տակ, որ իւր Սսոյ աթոռը պաշտպանելու նպատակով ամէն տեսակ նախատական լուտանքներ կը գրէր Էջմիածինի դէմ․ բայց չէինք ուզեր նոյն հոգին տեսնել նաեւ անոնց մօտ, որոնք լուրջ գրողի կերպարանքով կը պարծին։ Սեբաստացիին գրածին համեմատ, Մովսէսի նամակը Հռոմի մէջ կը տեսնէ Խուլը, և ֆրէսլ ղըրէնոճն՝ է Սթամբօլ յիէսլ կ'ըլլայ, ուսկից ինքն Սիմէոն ալ ընդօրինակելով պահած եմ կ'ըսէ (04 ԱՐՐ.723)։ Կը յիշէ նաեւ թէ Խուլին Հռոմ ղրկած օրինակին լուրը Գրիգոր Կեսարացիին ալ կը հասնի, որ մեղադրական գիր մը կ'ուղղէ Մովսէսի․ իւր նախկին ձեռնասունին։ Սակայն Կեսարացին Մովսէսին դրած թուղթը տեսած եւ պարունակութեան տեղեակ եղած չէ, որովհետեւ դօըղօղէօ անախորժելէ հօմբոա և օըփմաֆօյն ղըօյջ և ցօաֆէն աաօցօաձօ լսելով կը գրէ, իբր թէ Մովսէս Քաղկեդոնի ժողովն ալ ընդունած ըլլայ, և կամ Նիկոլի ու Խուլի նման պաշտօնապէս հռոմէական դաւանութեան յարած ըլլայ (ԶԱՄ.Գ.611)։ Բայց այսպիսի յայտարարութիւն բնաւ գոյութիւն չունէր, և թէպէտ պատճէնը մէջտեղ չկայ՝ որ մօտէն զննենք, սակայն դիւրին է մակաբերել, թէ պայլին անձին գովեստներ և Հռոմի աթոռին փառաբանութիւններ էին, յորս մերայինք կ'առատա-

*նային չափազանցելու պատճառ, երբոր Հռոմի կողմէն պաշտպանութիւն կամ օգնութիւն կը խնդրէին կամ կը յուսային։ Ներկայ պարագայից մէջ ալ Մովսէսի Լեհաց թագաւորէն և Հռոմի պապէն խնդրածն ու սպասածը՝ իր ազգակիցներուն և դաւանակիցներուն պաշտպանութիւնն էր, որպէսզի անոնց վրայ ստիպում և բռնութիւն չգործուի դաւանութիւննին փոխելու, և հռոմէականութիւն կամ լատինականութիւն կամ՝ քաղկեդոնականութիւն ընդունելու, այլ ազատ թողուին իրենց հայրենական դաւանութեան մէջ, որ կատարելապէս ուղղափառ և ճշմարիտ է։ Մովսէս իրաւամբ կրնար աւելցնել, թէ Հայ եկեղեցին հիմնական և էական կէտերուն մէջ հռոմէական դաւանութենէն տարբեր չէ։ Միանգամ ընդմիշտ պէտք է ըմբռնեն Հայ եկեղեցւոյ հակառակորդներ, հայազգի ըլլան թէ օտարազգի, որ Հայկական եկեղեցւոյ ներողամիտ և թոյլատու հոգին, ուղղափառութիւնը՝ քրիստոնէական ճշմարտութեանց և քրիստոսական անօրինութեանց էական կէտերու վրայ կը հիմնէ, վարդապետութեանց երկրորդական կէտերու մէջ իւրաքանչիւր եկեղեցւոյ ազատութիւնը կը յարգէ, անոր համար ուրիշ եկեղեցւոյ հետ հոգեւոր հաղորդակցութենէ չխորշիր, անոնց արտաքին առաւելութիւններուն և աշխարհային կարողութիւններուն վկայելու չզժուարանար, և մինչեւ մէկ սահման յարգանք ընծայելէ ալ չքաշուիր. բայց ոչ իր եկեղեցւոյ հնաւանդ ուղղափառութիւնը կը զոհէ, և ոչ ուրիշ եկեղեցւոյ իր վրայ իշխանութիւնը կ'ընդունի։ Երբոր այդ կէտերը ըմբռնուին, շատ դիւրին կըլլայ, մեր կաթողիկոսներուն և մեր վարդապետներուն բանձներուն և բրածներուն իսկական միտքը թափանցել, և քաշկռտուքներով չխեղաթիւրել։*

**1665.** *Մովսէս Տաթեւացիի կաթողիկոսական գործունէութիւնը շատ համառօտ եղաւ, երեքուկէս տարի միայն, սակայն քիչ չեղաւ իր արդիւնաւորութիւնը որ շատ կանուխէն*

ՄՈՎՍԷՍԻ ՄԱՀԸ

*սկսած էր, և կաթողիկոս չհռչակուած՝ կաթողիկոսական գործունէութեամբ կը փայլէր։ Մովսէս վախճանեցաւ 1632 մայիս 14'ին* (ԴԱՎ. 240), *բայց չէ ըսուած թէ ինչ պարագայից մէջ։ Տարիքը շատ մեծ պէտք չէ եղած ըլլալ, եթէ Գրիգոր Սրապիոնի կաթողիկոսութեան միջոցին, շուրջ 1600'ին* (§ 1584), *երբ 15 տարեկան աբեղայ ձեռնադրուեցաւ* (§ 1603), *որով մահուան թուականին մերձաւորաբար յիսնամեայ եղած կ'ըլլայ։ Ախտաւոր մըն ալ եղած չըլլալուն նշան կը սեպենք տոկուն և անխոնջ աշխատութիւնը և չարքաշ կեանքը մինչեւ կեանքին վերջը, որով պատահական ծանր հիւանդութիւն մը զայն տապալած պիտի ըլլայ, երբ գործով կամ հանգիստ նպատակով կը գտնուէր Երեւան, Ս. Անանիայի վանքը, իր սիրեցեալ և նուիրական օթարանը։ Երեւանեցիք, որոնց հետ այնչափ սերտ կապուած էր իր առաջին գործունէութեան օրերէն սկսելով, ուզած պիտի չըլլան յետ մահուան ալ անկէ բաժնուիլ, որ թաղումը կատարուած է նոյն քաղաքին մէջ, և գերեզմանն ալ դրուած է ժողովրդական գերեզմանատան մէջ Կողեռ բլուրին վրայ, որ այսպէս կոչուած է Յովհաննէս Կողեռն վարդապետին գերեզմանէն* (§ 833), *և որուն մօտ թաղուած էր նաեւ Մելքիսեդեկ Վժանեցին, որ նախընթաց 1631 տարին վախճանած էր* (ԴԱՎ. 309)։ *Մովսէսի վարդապետական գործունէութեան հետ կաթողիկոսական արդիւնաւորութիւնը, և բարեկարգական ջանքերուն հետ շինարար աշխատութիւնները՝ փոքրիշատէ պատմեցինք. բացատրեցինք նաեւ իր հաստատուն և անվրդով ուղղափառութեան հաւատքը, ինչպէս որ Հայաստանեայցս եկեղեցին կ'իմանայ և կը դաւանի։ Իսկ իր անհատական և առաքինական առաւելութեանց համար կը խօսին ամենուն սիրելի և պաշտելի դարձած իր գործերը, որով բացառիկ կերպով մը ամենուն անձկալի եղաւ և ընդհանուր միաձայնութեամբ կաթողիկոսական աթոռ բարձրացաւ։ Իրեն համար վկայուած է եւս, թէ էր* մուրակենցող և որբախնամ, երկայնամիտ և ողորմած, *և թէ զօրաւոր էր* աստուածաշնորհ վարդապետութեամբ, և քաղցր քարոզութեամբ, *որով գիտէր հոգիներ շահիլ* ուղղելով ի ճանապարհս արքայութեան (ԴԱՎ. 239)։ *Իր կաթողիկոսութիւ-*

նը Հայ եկեղեցւոյ համար դարագլուխ մը կը կազմէ ըսինք (§ 1648), և իրօք ալ իր օրով կը փակուի այն աղետալի և եղկելի շրջանը, որ ամէնէն աւելի յուսալից պայմաններու ներքեւ սկսաւ՝ աթոռոյն փոխադրութեան և Կիրակոս Վիրապեցիի ընտրութեան առթիւ, այլ որ յուսախաբ ելք մը ունեցաւ, շատ մը իրարու շղթայուած արտաքին և ներքին պարագաներու պատճառով։ Շատ ցանցառ մխիթարական արդիւնքներ ներկայեց մեզ 1441'էն մինչեւ 1629, մօտ երկու դարերու ժամանակամիջոցը, աւելի աղետալի դարձած՝ աթոռակիցներու դրութեան մուտք գտնելովը և ընդարձակ զեղծումներու դուռ բանալովը։ Միակ օգտակար հետեւանք ունեցաւ աթոռին յաջորդական և անընդհատ շարունակութիւնը պահպանելուն մէջ, որ կըրնար թերեւս վտանգի ենթարկուիլ, ամենադժուարին պատահարներու ներքեւ՝ եթէ կաթողիկոսի մահուան պահուն յաջորդը պատրաստ չգտնուէր։ Մովսէս իրեն աթոռակից չառաւ և առնել ալ չմտաբերեց, և անով վերջ տուաւ այդ տարաբաղդ սովորութեան։ Նպատակնիս ներբողական մը հիւսել չըլլալով, կանգ կ'առնենք մեր նկատողութեանց մէջ, գիտել տալով միայն այն մեծագոյն և բացառիկ պատիւը, զոր իրեն բրած է և կ'ընէ եկեղեցին, անոր անունը յիշելով հանապազօր պատարագի մէջ, եռամեծ հարց և հայրապետաց կարգին, և կցելով զայն ուրիշ լուսաւոր անունի մը հետ, և զոյգ յիշատակելով Գրիգորի և Մովսէսի Տաթևացւոց անունները (ԺԱՄ. 591), զի Մովսէս ալ Գրիգորի համանման, եղաւ լուսատուք ազգին Արամեան (ԴԱՎ. 239), որչափ ալ ոչ տօնացոյցը և ոչ յայսմաւուրքը չեն արձանագրած տակաւին նորա անունը։

## Տ. ՓԻԼԻՊՊՈՍ Ա. ԱՂԲԱԿԵՑԻ 1633 - 1655

**1666.** Մովսէս Գ Տաթեւացիի մահուամբ տեղի կ'ունենար աթոռոյ պարապութեան երեւոյթը, որ երկար ատեններէ իվեր ճըշմարտուած չէր, զի կաթողիկոսին մահուան վայրկեանին երիցագոյն աթոռակիցը ժառանգական ձեւով գահակալ կը դառնար։

ՓԻԼԻՊՊՈՍԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

Աթոռոյ պարապութեան հետ ընտրութեան գործողութեան պէտք կ'ըլլար, որ է ըսել կը վերակենդանանար հայրապետը ընտրելու իրաւունքը, որ խափանուած էր քանի որ նոյն ինքն կաթողիկոսներն էին, որ իրենց կամքով աթոռակիցներ կ'որոշէին և կ'օծէին, և անոնց կամքովը միայն կը լրանար նոր կաթողիկոսի ընտրութեան գործը։ Պէտք չէ ուրեմն անյիշատակ թողուլ եկեղեցական բարեկարգութեան և ժողովրդական իրաւանց այդ մեծ վերակենդանութիւնն ալ, իբրեւ Մովսէսի գլխաւոր արժանիքներէն մին։ Մայրաթոռին միաբանութիւնը և ազգին երեւելիները՝ ունակութիւն ստացած ըլլալով նախորդին կամքով յաջորդը որոշուած տեսնել, Մովսէսը վըտանգաւոր վիճակի և օրհասական ժամի մէջ տեսնելով, ուզեր էին անոր կամքը իմանալ յաջորդին նկատմամբ, և նա մատնանիշ ըրեր էր իւր աշակերտներէն արժանաւորագոյնը, Փիլիպպոս եպիսկոպոս Աղբակեցին։ Սակայն եպիսկոպոսներ չհամարձակեցան իսկոյն զայն յառաջ կոչել և օծումը կատարել, այլ հանգուցելոյն կամքը յարգելով հանդերձ, պէտք զգացին ազգային ընտրութեան պայմանը լրացնել, և ամէն գլխաւոր կողմերէ եղելութիւնը հաղորդելով անոնց հաւանութիւնը ստանալ։ Ցրիւ ժողովի ձեւ մըն էր, որ այս կերպով կը կատարուէր, և մենք իրաւունք ունինք այդ կէտն ալ նորէն Մովսէսի արդիւնք համարիլ, և անոր որոշ հրահանգին հետեւանք ըսել, զի անշուշտ անմիջական օծման կ'անցնէին միաբանք և մեծամեծք, եթէ բացարձակ եղած ըլլար Մովսէսի կամքը։ Այնչափ մեծ էր պաշտելութիւնը անոր անձին շուրջը։ Մովսէսի մահուան օրէն, 1632 մայիս 14'էն, ճիշդ ութը ամիսներ

*անցան մինչեւ 1633 յունուար 13, մինչեւ որ յետ մահուանն իւր տեղւոյ առաքեցին զթուղթ վկայական, զի Փիլիպպոս վարդապետ լիցի կաթողիկոս, և Աստուածայայտնութեան ութօրէքին, որ Մովսէսի օծման ալ չորրորդ տարեդարձն էր, կաթողիկոսական օծումը կատարուեցաւ, և ողջ Հայկականք բերկրեալ զուարճացան, զի փոխանակ հօր եկաց որդի՝ իշխան հանուր ազգի* (ԴԱՎ. 242)։ *Զմոռնանք ուրիշ մէկ նշանակութիւնն ալ, զոր ընդհանուր հաւանութեամբ կատարուած ընտրութիւնը կը ստանար, որովհետեւ տակաւին կենդանի էին Դաւիթ և Սահակ, երբ Փիլիպպոս կաթողիկոս կ'օծուէր, և այս կերպով անգամ մըն ալ կը հաստատուէր երկուքին ալ ազգային և եկեղեցական տեսակէտով կաթողիկոսական իրաւունքէ հեռացած կամ հեռացուած ըլլալը։ Աթոռոյ պարապութեան միջոցին տեղակալութիւնը հարկաւ վարած էր միաբան եպիսկոպոսներէն մին, թէպէտ Դաւրիժեցին չէ յիշած այդ պարագան, և ամենայն հաւանականութեամբ նոյն ինքն Փիլիպպոս է եղած տեղակալը, և զուցէ այս իսկ է Մովսէսի բերանը դրուած խօսքերուն իմաստը, թէ ես զՓիլիպպոս վարդապետն կամիմ լինել փոխանորդ իմ, և յաջորդ սրբոյ աթոռոյս* (ԴԱՎ. 242), *այսինքն է, փոխանորդ իբրեւ տեղակալ, և յաջորդ իբրեւ գահակալ։*

**1667.** *Փիլիպպոս բնիկ էր Աղբակ գաւառի Էրնկան գիւղէն։ Շուրջ 14 տարեկան եղածատեն Նոր բացուած Մեծ-Անապատին աշակերտելու կ'երթայ, բայց չընդունուիր վասն տղայական հասակին և անմօրուք գոլոյն, բայց նա կը թախանձէ, և զամս ութ Անապատին մօտերը ի մէջ մայրեացն առանձին կ'անցընէ, մինչեւ որ Սարգիս Պարոնտէր կը ստիպուի զայն ընդունիլ, բայց նորէն Անապատէն ներս չառներ, այլ կը յանձնէ Մովսէս Տաթեւացիին աշակերտութեան, որ տարագրութեամբ շրջէր յաշխարհէ* (ԴԱՎ. 241)։ *Եղելութիւնները բաղդատելով շուրջ 1609'ին կրնանք դնել Փիլիպպոսի դիմումը* (§ 1620), *և 1593'ին անոր ծնունդը, որով 40 տարեկան եղած կ'ըլլայ կաթողիկոս օծուած տարին, և կը համապատասխանէ 1655'ին 63 տարեկան վախճանելուն։ Երբոր կը հասնի ի տիս երիտասարդութեան կը ձեռնադրուի աբեղայ, կամ կուսակրօն քահանայ, և ուսմանց և ընթերցուածոց մէջ յառաջանալով, վարդապետական իշխանութիւն կընդունի նոյն ինքն Մովսէսէ, և նոյնէն եպիսկոպոս ալ կը ձեռնադրուի 1630'ին* (ԴԱՎ. 241)։ *Անգամ մը միայն առիթ ունեցանք յիշել Փիլիպպոսի անունը, երբ իբր Նուիրակ Վան կը գտնուէր 1629'ին, և կը մասնակցէր Սահակի հետ բանակցութեանց* (§ 1655)։ *Հաւանաբար նոյն ինքն է փոքրիկ Փիլիպպոս դպիր* (ՀԱՑ 623), *որուն խնդրանօք գրած է Ներսէս Մոկացի իւր տաղը ի գովեստ անոնց՝ որք եղեն սիրելիքն Աստուծոյ* (ՀԱՑ. 618), *որ այնչափ սիրելի եղած էր խնդրողին և գրողին հաւասարապէս։ Եթէ Մովսէսի կաթողիկոսական շրջանին մէջ շատ յիշատակութիւններ չեն ըլլար Փիլիպպոսի գործունէութեան, պատճառն այն է, որ անմիջապէս կապուած էր Մովսէսի անձին, իբր անոր անբաժան գործակիցը, և առիթ չունէր զատաբար յատուկ գործեր կատարելու։ Եւ իրաւացի ալ էր այդ կապակցութիւնը, քանի որ ինչպէս յիշեցինք, իւր աշակերտութեան առաջին քայլէն Մովսէսի հետ գտնուած էր շարունակ։ Այդ սերտակից գործակցութեան հետեւանքն է նաեւ, որ Փիլիպպոս Մովսէսի յաջորդելով, նոր բան մը ընելու չձեռնարկեց, այլ յամենայնի և ըստ ամենայնի ջանաց լրացնել Մովսէսի սկսած՝ բայց արագահաս մահուամբը լրացնել չկրցած ձեռնարկները* (§ 1645), *որոնց նորէն մանրամասնութեանց մտնել աւելորդ կը դատենք։*

**ՓԻԼԻՊՊՈՍԻ ՆԱԽԸՆԹԱՑԸ**

**1668.** *Ժամանակին նշանաւոր դէպքերը քաղելու սկսած ատեննիս, առաջին պիտի յիշենք Դաւիթ Դ Վաղարշապատեցի կաթողիկոսին մահը, զոր Ոսկան վարդապետ յիշած է, Դաւրիժեցիին պատմութեան իւր տպագրած օրինակին մէջ, իբր զի նոյն յիշատակութիւնը չէ տեսնուած սկզբնագիր օրինակներուն վրայ։ Ըստ այսմ կը տեղեկանանք թէ Փիլիպպոսի յառաջնորդութեան ամի, մինչ Դաւիթ յամենայն օգնական* (ԴԱՎ. 338)։ *Դաւիթ աթոռակից կաթողիկոս նշանակուած էր*

**ԴԱՒԻԹԻ ՄԱՀԸ**

1584'ին (§ 1575), և մահն ալ Փիլիպպոսի առաջին տարիին, այսինքն 1633 օգոստոսին դնելով, 49 տարի կաթողիկոս անունը կրած կ'ըլլայ, բայց կրնանք ըսել, առանց երբեք իսկապէս եւ իրապէս կաթողիկոսութիւն վարած ըլլալու։ Մինչեւ 1590 պարզապէս աթոռակից էր (§ 1581), և գահակալութեան սկիզբը Մելքիսեդեկ Գառնեցին իրեն աթոռակից ընտրելով, իր վրայ բռնակալ տիրապետող մը սանձած եղաւ, որ շուտով ամէն գործունէութիւն և ազդեցութիւն ձեռք անցուց, և Դաւիթ պարտաւորուեցաւ քօղարկեալ կացութեան ներքեւ մնալ։ Մեծ գաղութին հետ Մայրաթոռէ հեռացաւ, և Ասպահան քաղաքը ամփոփ եւ նեղ շրջանակի մէջ ապրեցաւ։ Նոյն պատահաբար ազգայիններու պնդելուն վրայ (§ 1606), կամ Մելքիսեդեկի կալանաւորութեան միջոցներուն (§ 1610) Մայրաթոռ դարձաւ, գործերուն տիրանալու կարողութիւնն ու ժրութիւնը չունեցաւ, և վերջապէս արքունի հրամանով Մելքիսեդեկ զօրացաւ ու տիրացաւ (§ 1616), մինչեւ իսկ իր կամքով առանց Դաւիթը սեպելու աթոռը Սահակի փոխանցեց (§ 1633)։ Զանց կ'ընենք Սրապիոնի և Աւետիսի աթոռակցութիւնները, որոնք կացութեան վրայ մեծ փոփոխութիւն չբերին։ Սահակ ալ թէպէտ իբր տիրապետ առանձնեց գործը, բայց իսկապէս չտիրացաւ անոր, և վերջապէս 1629'ին ինքն ալ Դաւիթն ալ, հրաժարեալ և ձեռնթափ նկատուեցան, իրաւասութենէ հեռացան կամ հեռացուեցան, և օրինաւոր գահակալութիւնը Մովսէսի անցաւ (1654)։ Դաւիթի աննշանակ գոյութեան հակառակ, մենք զայն իբրեւ գահակալ նշանակեցինք 1590'է մինչեւ 1629'ի սկիզբը, 39 տարիներու համար, պահելով միայն պաշտօնական և կանոնական պահանջներուն, որովհետեւ հնար չէր Դաւիթի պաշտօնական իրաւասութեան առենը՝ Մելքիսեդեկն ու Սրապիոնը ու Սահակը իբր գահակալներ ընդունիլ, և սովորական ցուցակին համեմատ 1593'էն առաջինը, 1603'էն երկրորդը, և 1624'էն երրորդը բաւէ և գահակալ կաթողիկոսներու զաւազանին անցընել։ Սխալ է եւս որ Մելքիսեդեկի, յետ վախճանին Դաւթի, տիրեալ ամս 7, կաթողիկոսութիւն վարած ըլլայ (ԺԱՄ·637), զի Մելքիսեդեկ Դաւիթէն 7 տարի առաջ մեռաւ Կամենից քաղաքը (§ 1639)։ Դաւիթ ընդհանուր առմամբ, եթէ չըսենք անուանական և թարմատար, գոնէ անգործ և ապիկար կաթողիկոսի մը նկարագիրը կը ներկայէ, և չարժեր որ աւելի երկարենք իր կաթողիկոսութիւնը գնահատելու կամ իր գործունէութիւնը կշռադատելու համար։ Ինչպէս աննշանակ ապրեցաւ, աննշանակ ալ մեռաւ Դաւիթ Ասպահանի առանձնութեան մէջ, իննսունը անցուցած տարիքի մէջ, առանց յիշատակաց արժանի բան մը թողլու իր ետեւէն։ Իր դաւանական ուղղութեան վրայ կասկածի տեղի չունինք, քանի որ միշտ Նոր-Ջուղայի գաղթականութեան մէջ ապրեցաւ, որ միշտ ամուր եղած է հայադաւան ուղղափառութեան վրայ։ Դաւիթի ալ Պօղոս Ե պապին գիր մը գրած ըլլալը կը յիշեն հռոմէականք, սակայն նոյն իսկ այդ նամակին տրուած 1605 թուականը, որ պատերազմի և քաղաքական տագնապներու տարին է (§ 1585), կեղակարծ կը ցուցնէ այդ նամակին գրութիւնը։ Միւս կողմէ եթէ Դաւիթ տասողանոց խօրոց առթիւ գրեց, այս եղած կ'ըլլայ իր բուն նպատակը, և ոչ տաանուբեան և հողտանուբեան յայտարարութիւնը (ՉԱՄ·600)։ Բայց այդպիսի նամակներուն նշանակութեան վրայ բաւական խօսեցանք։

**ԽՈՒԼԻՆ ՄԱՀԸ**

**1669.** Քիչ ետքը ուրիշ խօսուած անձ մըն ալ կը կնքէր իր կեանքը՝ հեռու երկրի մը մէջ, Յովհաննէս Խուլ պատրիարքը Հռոմի մէջ։ Վերջին անգամ զինքն տեսանք Լիվոռնի մէջ Նիկոլի օգնական և Հայերը բռնի կաթոլիկացնելու ձեռնարկին գործակից (§ 1663)։ Լեհահայեր չկարենալով տեղական իշխանութիւններէ պաշտպանութիւն գտնել, կարծեցին որ կարենան պապին կողմէ պաշտպանուիլ, և Մովսէսէ պապին գրուած նամակին հետ (§ 1664), որ իրենց զրկուած էր, պատուիրակութիւն մը յղեցին Հռոմ (ՊԱՎ·294)։ Նիկոլ կասկածելով որ մի՛ գուցէ յաջողին՝ իրեն դէմ ամբաստանութիւններ կուտելով, ինքն ալ փութաց ետեւէն Հռոմ երթալ, Խուլն ալ ընկերա-

ցաւ Նիկոլի պաշտպանութեան համար, և Հռոմ հասան 1632'ին վերջին ամիսները։ Այս տեղ է որ Խուլը, թէպէտ մինչ այն ատեն հռոմէականութեան յարած, այլ ոչ պաշտօնապէս կաթոլիկ գրուած, այս անգամ եկեալ հռովմ այս սուրբ տեղի, ընդդանդեցաւ ուխտին բաբէ (11 ԱՄՍ·24), կամ լատիներէն տապանագիրին համեմատ, հաստատը դաւանել ուղիղ նոյն ինչ հաւատոյ արաւին մէջ, հաւատոյ գերագոյն եկեղեցին Սուրբ Աստուածոյ Առաքելական այջե (11 ԱՄՍ·25)։ Այս վկայութիւնը կը հաստատէ թէ Խուլը մինչ այն ատեն կաթոլիկ չէր եղած, որչափ ալ կաթոլիկութեան միտեալ ըլլար, այլ պաշտօնապէս կը մնար հայադաւան եկեղեցւոյն մէջ։ Դաւանութեան փոփոխութիւնը ներքին մտածմունքով չլրանար, պաշտօնապէս գործողութեան պէտք ունի, և Խուլը անոնք կատարեց Հռոմի մէջ 1632'ին։ Հռոմի որոշումն ալ, ինչպէս դիւրին է մակաբերել, Նիկոլին նպաստաւոր եղաւ, և անէբար Սղմայեցոյն Ներհակեցան Հայոց և յախողեցին դեանս նոցա (ԴԱՎ·294)։ Հայեր յուսաբեկ և Նիկոլ յաղթական Իլվով դարձան, իսկ Խուլը Հռոմ մնաց ութսունի մօտ տարիքին մէջ, պապին կողմանէ սատնալով այն դիւրութիւնները, զոր յոյս չունէր գտնել Կ-Պոլսոյ մէջ, և այլեւս հանդարտ կեանք մը անցուց։ Կալանոսի վկայութեամբ Խուլը զանազան գրուածներ թողած է լատինամիտ ուղղութեամբ և հայերէն լեզուով, որոնք Հայութեան մէջ երբեք ճանչցուած չեն, և ձեռագիր կը պահուին կ'ըսուի Հռոմի Բրոբականտայի դիւանին մէջ (11 ԱՄՍ·21)։ Կալանոս Խուլին գրածները իբր զօրաւոր փաստ կը նկատէ լատին դաւանութիւնը ջատագովելու, թէպէտ ասով աւելի ակարացուցած կ'ըլլայ իւր դրութիւնը։ Գրուածը ուղղուեր է ընդդէմ Հայոց, եթէ ջատագովելոյ երկուց բնութեանց Քրիստոսի, և է անշուշտ պապէն գտած ընդունելութեան փոխարէնը։ Դիւրաւ կը հասկցուի Խուլին այսպիսի գրուած մը պատրաստելը, բայց անհասկնալի կը մնայ անոր հեղինակութեամբ Հայոց եկեղեցին դատապարտելու և Լատին եկեղեցին պաշտպանելու ձգտող Կալանոսի և հետեւողներուն մտայնութիւնը (11 ԱՄՍ·22)։ Երկար չեղաւ Խուլին Հռոմի մէջ անցուցած կեանքը, ուր հասած էր 1632'ին վերջերը, և մեռաւ 1634 յունիս 13'ին (11 ԱՄՍ·24), որ հաւանաբար նոր տոմարով նշանակուած է, և հին տոմարին յունիս 3'ին կը պատասխանէ։ Գերեզմանը Հայերուն հիւրանոցին կից Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյն մէջն է հայերէն և լատիներէն տապանագիրներով, բայց տարբեր խմբագրութեամբ։ Լատիներէնին մէջ ըսուած է, թէ Բարբարոսներու արքունական սպասաւորներու մէջ, եկեալ հայր և հօրն և կարգադեր, ծաղկեալ ու հայոն ու եկեղեցին կոտորեալ և արամեց և ազգաց (11 ԱՄՍ·25). բայց աւելի ճիշդ եղած կ'ըլլար եթէ ըսուէր, թէ հակառակ ժողովուրդին խղճալի պարագաներուն, փառամոլ ձգտումներով երկպառակութիւն արծարծեց և հակառակութիւն վարեց՝ ուր որ ալ գտնուեցաւ։ Այս եղաւ Խուլին վախճանը, ճիշդ 80 տարեկան հասակին մէջ, զի ծնած էր 1554'ին (§ 1696)։

**1670**. Պատմութեանս մէջ մտադրութեան առարկայ եղած անձերէն մէկն ալ Սահակ Դ Գառնեցի աթոռակից կաթողիկոսն է, զոր վերջին անգամ յիշեցինք Տիարպէքիրի մէջ վարած դերին, և գտնուած խայտառակ դիրքին մէջ (§ 1656)։

ՍԱՀԱԿԻ ԽԵՂՃՈՒԹԻՒՆ

Երբոր Սահակ և ընկերը Պօղոս Այնթապցին, Տիարպէքիրի մեծամեծներուն միջնորդութեամբ ազատեցան Խուրէվ եպարքոսին խստութենէն, հազիւ թէ քանի մը օր եւս կրցան այնտեղ մնալ, և լռելեայն խոյս տուին Տիարպէքիրէ։ Սահակ Օսմանեան երկրի մէջ խայտառակուած, և Պարսկական սահմաններէն փախըստական, գաղտ կերպով եկաւ Կարին, բայց այնտեղ ալ չկրնալով մնալ Վրաստան անցաւ, բայց ոչ եւս իբր կաթողիկոս, զի ոչ ոք զինքն կ'ընդունէր, և ոչ մէկուն առջեւ յարգ ու պատիւ կը վայելէր։ Կ'երեւի թէ այն կողմերը ապրեցաւ յանծանօթս, որչափ կենդանի էր Մովսէս, և հազիւ Փիլիպպոսի յաջորդելէն ետքը համարձակեցաւ անոր մօտ գալ։ Մէկ կողմէն խեղճութիւն, և միւս կողմէն ցաւ ինձ սրտի, որ երթալով մահացու ախտի կերպարան առաւ, զինքն ստիպեց էջմիածինի խնամքին

դիմել. եկաւ ի սուրբ Էջմիածին, և թող տա-ցէն ի սուրբ Աթոռն Էջմիածին (ԴԱՎ. 188)։ Սահակ այլեւս ոչ միտք և ոչ կարողութիւն ունէր իր յաւակնութիւնները վարելու, ուստի Փիլիպպոս չվարանեցաւ ընծայել քրիստոնէական սիրոյ անյիշաչարութիւնը, և պատսպարել զայն իր վերջին խեղճու-թեան մէջ։ Ենթադրելով որ 1634'ին ա-տենները Սահակ եկած ըլլայ Էջմիածին, հինգ տարի եւս ապրած կ'ըլլայ այնտեղ մինչեւ իր մահը (ՁԱՄ. Գ. 609)։ Սահակի գործակից եղող Պօղոս Այնթապցիին համար գրուած է, թէ Տիարպէքիրէ հեռանալէն ետքը եկած է Կոստանդնուպոլիս, անկէ ալ Ռումէլի անցած, և վերջէն Լեհաստան, ուր կեցեալ ժամանակս ինչ, վախճանած և թաղ-ուած է այնտեղ (ԴԱՎ. 188)։ Պօղոսի Լե-հաստան գալու առենը կը հանդիպի Նի-կոլի բռնութեանց և չահատակութեանց միջոցին, բայց յայտնի չէ թէ Պօղոս ինչ դեր բռնեց այդ եղելութեանց մէջ, թէ որչափ եւս ապրեցաւ, և որ քաղաք ու որ տարին հանդիպեցաւ անոր մահը, զի ուրիշ պարագայի մը մէջ այլեւս անոր անունը յիշուած չէ։

ԾՌԱԶԱՏԻԿԻ ԱՆՑՔԵՐԸ

**1671.** Ծռազատիկներու պարբերական չրջանին համեմատ, անգամ մըն ալ հանդի-պեցաւ այն 1634'ին, Գրի-գոր Պարոնտէրի պատ-րիարքութեան օրով։ Ծը-ռազատիկները սկսած էին ընդհանրապէս գիտողութեան տեղի չտալ երկու ազգութեանց՝ Յոյներու և Հայերու միջեւ, բայց կը պահէին իրենց նշանակու-թիւնը Երուսաղէմի մէջ, լուսահանութեան պարագային պատճառով, երբ զի Ճրագա-լոյցի հրաշալի լոյսը, մէկ կամ միւս ազգին զատիկը պիտի նուիրագործէր։ Կարծես թէ այս անգամ ուրիշ անգամներէ աւելի կա-րեւորութիւն առացած էր խնդիրը, և կա-նուխէն սկսած էին փոխադարձ սպառնա-լիքներ իրարու զատիկները խափանելու։ Յոյներ մինչեւ իսկ Գրիգոր պատրիարքին կեանքին կը սպառնային եթէ չհամակերպի իրենց հետ զատիկ ընել ապրիլ 6'ին, իսկ Հայեր անդրդուելի էին իրենց հաշուով ապրիլ 13'ին տօնելու, և Գրիգոր մէկ կող-մանէ կ'աշխատէր բանակցութիւններով ի-րաւախոհութեան գալ, և միւս կողմէն Հայ առաջնորդներուն կը գրէր, որ ուխտաւոր-ներ օր առաջ ներկայ գտնուին Երուսաղէմ պատշաճ պաշտպանութեան համար. մե-ծամեծ գումարներ ալ կը ծախսէր քաղա-քին և կառավարութեան գլխաւորները Հայերու կողմը շահելու համար։ Յունադա-ւան ուխտաւորներ, Յոյներ, Ռուսեր, Վրա-ցիներ, Պուլղարներ, Սըրպեր, Ուլահներ, Պօչնաքներ, և տեղացի խառնիճաղանճը, մեծ թիւով հաւաքուած էին, արքունական հրովարտակ ալ ձեռք ձգած էին, Դամաս-կոսի կուսակալն ալ շահած էին, և չափ չկար իրենց խոստումներուն և սպառնա-լիքներուն, եթէ Հայեր չուզեն միասին զա-տիկ տօնել։ Մեծամեծ անտեղութեանց վա-խեր կային, երբոր բարեդէպ պարագայ մը հասաւ Հայերու օգնութեան։ Ծովակալ Քիւչիւք Ահմէտ փաշա Պաղեստին կը հա-նէր Ցախրէտտին-պին-Մատն, կամ Մանօղ-լու ապստամբին վրայ, իրեն հետ էր իր Հայազգի հանդերձապետը Աւետիք Բաղիշե-ցի, որ անցուդարձին տեղեկանալով, ծո-վակալին իմացուց վերահաս վտանգը, որ իսկոյն հրաման ըրաւ կուսակալին Յոյները զսպելու։ Նախապէս զինաթափ ըրին բոլոր յունադաւանները, և անոնց զատկին օրը զինուորական պատրաստութեամբ պաշա-րեցին Ս. Յարութեան տաճարը։ Գրուած է թէ ծովակալին կողմէ ղրկուած գունդը Յունաց զատիկին առթիւ խռովեաց զդասն եկեղեցւոյն, և ոչ եթող Յունաց մտանել ի ներս (ՁԱՄ. Գ. 616)։ Սակայն այդ բացատ-րութիւնը ճիշդ չկրնար ըլլալ, որովհետեւ ոչ միայն անհնար էր իշխանական հրամա-նով ժողովուրդի մը զատիկը խափանել, այլ ուրիշ ակնարկէ մը կը ստուգուի, թէ Յոյնք տօնեցին զզատիկն խաբէութեամբ, և ամօթական լոյսն ել վասն նոցա (ԱՍՏ. Ա. 322)։ Ուստի պէտք է ըսել թէ ծովակալին կարգադրու-թիւնն եղաւ, որ երկու ազգեր իրարու զա-տիկը չարգիլեն, և թէ այդ հրամանը կա-տարուեցաւ, և երկու ազգեր զատ զատ տօնեցին շնորհիւ ծովակալին միջամտու-թեան։ Ինչ որ խափանուեցաւ, Յոյներու մեծամտութիւնն էր, որ իրենց վայելած ա-ռաջնութեան շնորհիւ կը պահանջէին ա-մէնքը իրենց հպատակեցնել։ Այս էր որ ի-

բենց չաջողեցաւ, և Հայերն ալ իրենց զատիկը ըրին նուիրական լուսահանութեամբ, ինչպէս կը գրէ ականատես մը, թէ Հայոց զատիկը փառաւորուեցաւ պայծառ լուսաւորեալ է սուրբ Գերեզմանէն (ԹՈՐ. Բ. 432), և թէ մոլորեցան Յոյնք, և թէ Հայք, Հաբաշք, Ասորիք և Ղփտիք ուղիղ կային (ՍԱՄ. 178): Գրիգոր պատրիարք կրցաւ մխիթարուիլ առանց դժպհի միջադէպի անհագին վտանգ մը անցուցած ըլլալով: Միայն մայրաքաղաքի մէջ երկու անձերու դէմ թշնամութիւն գործեցին Յոյները, յատկապէս Երուսաղէմէ դարձող Յոյները, որ կը ցուցնէ թէ այն երկուքը մեծ դեր ունեցած են Յոյներու դէմ եղած ձեռնարկներու մէջ: Յիշեալ երկուքն էին Մինաս քահանայ և Սէֆէր Ալաճաճի, այսինքն գունաւոր կտաւներ վաճառող, որոց գերեզմաններն ալ կը յիշուին (ՁԷԼ. 50): Երկուքին դէմ ամբաստանութիւններ յօդեցին էնր յանցաւոր չէրս արքունէ (ՁԱՄ. Գ. 616), և իսկոյն դատաստանի ենթարկուեցան և ուրացութեան հրաւիրուեցան՝ իբրև ազատութեան պայման, զոր երկուքն ալ մերժեցին և քրիստոնէութիւննին բարձրաբարբառ դաւանեցան, որով գլխատման դատապարտուելով կատարեցան սրով (ԱՍՏ. Ա. 321), կամ յարքունէ դատան վճռեցան (09 ԱՄՍ. 204), և նահատակաց կարգը դասուեցան: Երկուքին հետ ուրիշներ ալ նահատակակից պէտք է եղած ըլլան, զի Քէօմիւրճեան ծերք օմանք ալ կը յիշէ ընդ Մինաս քահանայն (ՁԷԼ. 50): Իսկ թուականը իրէպ է պահել նոյն իսկ 1634 տարին, այլ օրը կը մնայ անորոշ:

**1672.** Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան գործերը նկատելի խողութիւններ չէին ներկայեր, յորմէհետէ մրցակցութիւնը թէ ոչ դադարեր, չատ թեթեւցեր էր, երկու մեծ մրցակիցներուն, Կեսարացիին և Խուլին հեռանալովը: Զաքարիա Վանեցին գրաւած էր պատրիարքական աթոռը 1628'էն իվեր (§ 1642), և Սահակի ալ օգնած էր՝ անոր անունին նոր կաթողիկոսութեան հրովարտակ հանել տալով (§ 1655), բայց վերջէն սախուեցաւ համակերպիլ Մովսէսի կաթողիկոսութեան, երբ Սահակի գործը ձախողեցաւ

**ԿԵՍԱՐԱՑԻԻՆ ՄԱՀԸ**

(§ 1656), և հաւանական է որ չմտաբերեց ալ Փիլիպպոսի կաթողիկոսութեան արգելք յարուցանել, և ինքն ալ զոնուեցաւ անոնց հետ, որ յերտանչէր տեղւոյ թղթով հաւանութիւն յայտնեցին Փիլիպպոսի կաթողիկոսութեան (ԴԱՎ. 242): Համանական ըսինք, վասնզի ճիշդ այդ միջոցին, Հայոց 1082 թուին, զինքն ժողովրդէն Ստամպօլէ (ԳԱԼ. 345): Արդ Հայոց 1082 թուին ամանորը կ'իյնար 1632 հոկտեմբեր 14'ին, Փիլիպպոսի օծումէն երեք ամիս առաջ, ուստի կրնայ կարծուիլ, թէ Զաքարիայի կողմէ դժկամակութեան նշաններ՝ կրցան պատճառ ըլլալ նորա պաշտօնանկութեան, և Գրիգոր Կեսարացի որ անոր յաջորդեց, նա եղաւ Կոստանդնուպոլսոյ պատրիարքական աթոռին անուամբ Փիլիպպոսի կաթողիկոսութեան հաւանութիւն յայտնողը, որ իւր ձեռնասուն Մովսէսի ձեռնասունն էր: Կեսարացիին բազմաթիւ պատրիարքութիւններուն վերջինն է այս, զի երեք տարիէն 1636'ին աթոռի վրայ եղած ատեն վախճանեցաւ, և Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ թաղուեցաւ (ԿՈԼ. 79), ուր այժմ ծլլեւս գերեզմանը չերեւիր, անշուշտ նոյն եկեղեցւոյն 1736'ին հրկիզուելէն ետքը վերաշինուած պահուն տեղի ունեցած անմտադրութեան պատճառով: Կեսարացիին վերջին պատրիարքութեան ժամանակամիջոցը նշանաւոր դիպուած մը չներկայեր, և խաղաղ պաշտօնավարութիւն մը ունեցած է: Նա շատ նշանաւոր անձնաւորութիւն մը եղած է, զոր Դավրիժեցին կը կոչէ այր երեւելի, վարդապետն պարկեշտ և շնորհալից, իմաստասէր բնական փորձեալ, բանիբուն և յոյժ հանճարեղ, այնպէս որ անուանի էր ի մէջ ազգաց, և ամենայն ազգաց խոնարհեալ կային ընդ նմանէ (ԴԱՎ. 288): Եկեղեցական և ազգային խորին գիտութենէ զատ, հմուտ եղած է համարողականին և երկրաչափականին, գրած է Թուականք և տոմարաբանք, Աղամէն մինչեւ իւր ժամանակը, հայերէն գիրով և լեզուով երկնագունդ մը շինած է, յօրինած է քերթուածներ, գանձեր և տաղեր (06 ԼՈԹ. 1184), բայց ամէնէն վեր է իւր ազգային եկեղեցւոյն պաշտպանութեան համար ամուր համոզումը և անխոնջ ջանքը, որով յաղթական կերպով մաքառեցաւ լատինասէր և

լատինամիտ կուսակցութեան դէմ։ Իրեն յիշատակին փառաւոր վկայութիւն մը եղաւ եկեղեցւոյ մէջ Թաղուիլը, բացառիկ ուրբա-նի հրամանով, և Շահին չէլէպի ազգայնոյն միջնորդութեամբ, ինչպէս կը վկայէ իւր եղբօրորդին Յակոբ Կեսարացի քահանան (ԿՈԼ. 79)։

1673. Կեսարացիին պատրիարքութեան վերջերը սուլտան Մուրատ Դ նոր արշաւանք մը կազմեց Պարսիկներուն դէմ։ Արքունի վրանը կանգնեցաւ Իւսկիւտար 1635 փետրուար 21'ին, մարտ 12'ին ճանապարհ ելաւ Մուրատ, մեծամեծներու ընկերակցութեամբ և անհեղ բանակով (ԺՈԻ. 233), որ 700.000 կը կարծուի (ԴԱՎ. 243), յուլիսի վերջը Երեւան պաշարուեցաւ, և յաստօր-յուն (ԴԱՎ. 234) Մուրատ տիրեց քաղաքին օգոստոս 8'ին։ Յաջողութեանը օգնեց Պարսիկ կուսակալին՝ Ամիրգունայի որդւոյն Թահմազղուլիի կամակցութեանը, թէպէտ և մեծ եղաւ Մուրատի ալ իւր զինուորներուն ազդած քաջալերութիւնը։ Հանդիսաւոր կերպով կատարուեցաւ օգոստոս 14'ին ուրբաթի աղօթքը, և քրիստոնեաներ ալ բռնիպուեցան յաղթութեան համար գոհաբանութիւններ կատարել (ԺՈԻ. 233)։ Անշուշտ Փիլիպպոս կաթողիկոս ալ մասնակցած է այդ հանդիսութեանց, և մեծահանդէս կատարած օգոստոս 16'ին Վերափոխման տօնը։ Մուրատ Երեւանէ յառաջելով Երասխը անցաւ, և Թաւրիզի վրայ քալեց, և սեպտեմբեր 12'ին քաղաքը առաւ և աւարի մատնեց։ Թօթուրի պաշարումը յաջող չեղաւ ձմեռնային ձիւներուն պատճառով, և Մուրատ առանց ուրիշ գործի ձեռնարկելու ետ դարձաւ, և 1635 դեկտեմբերի վերջը Կ-Պոլիս մտաւ յաղթանակով (ԺՈԻ. 234)։ Սակայն Օսմանեան տիրապետութիւնը վաղանցուկ եղաւ Երեւանի և Էջմիածինի վրայ։ Հազիւ թէ Մուրատ ետ կը դառնար, որ Շահսէֆի պատերազմական պատրաստութեանց կը ձեռնարկէր՝ Երեւանը ետ առնելու համար, որուն Օսմանեան կուսակալ էր անուանուած, Մուրթեզայ փաշա, Քէօրէ-բօյ ու Խէլօյէ էչէօն կոչուած (ԴԱՎ. 243), բայց սպանուեցաւ պաշարման ատեն (ԺՈԻ. 234), որ 93 օր տեւեց (ԴԱՎ. 243), և 1636 սեպտեմբերին Պարսիկներ տիրեցին Երեւանի, և երկու օր երկու գիշեր տեւող Մինրիպանի ճակատամարտէ ետքը Օսմանցիք բոլորովին վտարուեցան Պարսիկներէ առնուած գաւառներէն (ԺՈԻ. 235)։ Տարիէ աւելի տեւող պատերազմներուն պատճառով աշխարհն Արարատու խոր շէջօկօյ հատատօւն աւրուեցաւ և քանդուեցաւ, և Էջմիածինն ալ նշանաւոր վնասներ կրեց, չէ որ Ինչ փոյթոչէրը չէնչ կոյէն հանքերան, նոյնպէս Երեւանի Ս. Անանիայի վանքն ալ քանդուեցաւ, ուր մատուէն զատ ամենայն ինչ փայտակերտ էր եղած։ Փիլիպպոսի հարկ եղաւ նորէն նորոգութեանց ձեռնարկել, և իւր կատարած շինութեանց մէջ յատկապէս կը յիշուին՝ Էջմիածինի սեղանատունին քարէ սեղաններն ու նստարանները ու գետնի սալարակը, արեւելեան կողման խուցերը, եկեղեցւոյ տանիքը, գմբէթին գլխակը, եկեղեցւոյ չուրջի և խուցերուն ու տուներուն առջեւի քարակապ սալայատակը, երկու ձիթահանքերը, Ս. Անանիայի վանքին ժամատունը ու սեղանատունը ու խուցերը, և այլ մանաւոր շինուածներ, զորս պատմիչը յանուանէ չյիշեր, և ամէնքը ուղ Բեւ Նոյոն, այլ հոքէն ու Բոռոշ (ԴԱՎ. 244)։ Այս շինութիւններով անցուց Փիլիպպոս 1636 և 1637 տարիները, Պարսիկ տէրութեան պաշտպանութեամբ։ Շահսէֆի ուզեց իրաց կացութիւնը հաստատուն պայմանի կապել, և 1637 օգոստոս 9'ին յատուկ դեսպան ալ յղեց Կ-Պոլիս, այլ Մուրատ չհաւանեցաւ, և խաւարտչին բանտի մէջ փակեց Մաքսուտ խան դեսպանը, միտք ունենալով նորէն Պարսիկներուն դէմ պատերազմի ելլել (ԺՈԻ. 235)։

1674. Փիլիպպոս կաթողիկոս Էջմիածինի շինութեանց համար այնչափ ջանք

ԱՋԻՆ ՎԵՐԱԴԱՐՁԸ

թափած ատեն, չէր կրնար անտարբեր աչքով տեսնել, որ Մայրաթոռ զրկեալ մնայ իւր գլխաւոր զարդն ու նուիրական սրբութիւնն եղող Լուսաւորչի Աջէն, որ աղբիւրն էր օրհնութեանց և կնիքը հայրապետական իշխանութեան, բայց Նոր-Ջուղայ խօջայ Սաֆարի տունը կը մնար, յորմէհետէ հոն յղուած էր

*1612'ին Շահաբասի հրամանով* (§ 1609)։ *Փիլիպպոս մտածեց անձամբ զբաղիլ այդ գործին, և* 1637'*ին ամառուան միջոցին գնաց Սպահան, և առանց իր միտքը յայտնելու, առաջ պտտեցաւ Հայ գաղթականներու մէջ, քարոզելով նոցա զբանն Աստուծոյ, այլ միւս կողմէն ժողովէր ի նոցանէ ընծայաբերս սուրբ Էջմիածնի, այսինքն է նուիրակութեան հասոյթները, որոց պէտք ունէր կատարուած նորոգութեանց համար* (ԴԱՎ․ 244)։ *Բայց իր միտքը Աջը վերադարձնելն էր, որուն համար երկու դժուարին պայմաններ կային առջևը, Շահսէֆիի թագաւորական հրամանը, և Հայ գաղթականութեանց հաւանութիւնը։ Այս երկրորդս ալ առաջինէն ոչ նուազ դժուար էր, որովհետև այդ հայրենազուրկ գաղթականները բոլորով սրտով յարած էին Աջին ներկայութեան, անկէ ակնունելով ամէն յաջողութիւն իրենց վտարանդի կեանքին մէջ։ Փիլիպպոս նախ արքունի հրամանին ետևէն եղաւ, և այս նպատակին համար իրեն կողմը շահեցաւ Հայոց երևելիներէն պէտք եղած անձերը, որոնք ժողովրդական անխորհուրդ բարեպաշտութենէն աւելի՝ կանոնական պատշաճողութիւնը կը զգային, և կամէին ընծայել Աջոյն յԷջմիածին։ Անոնց ձեռքով Պարսիկ իշխաններուն դուռը ձեռք առաւ, և* [illegible] *ամենեցուն հաճեցոյց։ Անոնց ալ օգնութեամբ թագաւորին խնդրագիրը պատրաստեց, և զայն ներկայեցուցեալ* [illegible], *և յաջողեցաւ թագաւորական կնքով հաստատուած հրամանագիրը ստանալ, որ Աջը՝ պէտք է իրեն յանձնուի։ Խօջայ Սաֆարի թոռներ, Ջալալ, Միքայէլ, Սինան և Պատիկ, ժողովուրդէ գրգռուելով զլացան իրենց մեծհօր յանձնուած աւանդը ետ տալ, մինչև որ Փիլիպպոս պարտաւորուեցաւ հայրապետական անիծիւք անոնց ընդդիմութեան յաղթել, և Աջը մեծ թափորով բերուեցաւ քաղաքին մէջ Խօջենց եկեղեցին։ Փիլիպպոս պատարագեց կիրակի մը, եբաց զԱջն, օրհնեց և քարոզեց, բայց ապա կային ընդդէմ ամենայն Ջուղայեցիք։ Ուստի հարկ եղաւ գաղտնի փոխադրութեան դիմել, գործակցութեամբ քահանաներու և գլխաւորներու, որոնք փոխադրութեան պէտքը զգացած էին։ Լուսաւորչի Աջը Խօջենց եկեղեցիէն բերին ի վանքն Ջուղայու, որ է Նոր-Ջուղայի Ս․ Ամենափրկիչը, անկէ քաղաքին մէջ Երևանցիներուն թաղը, անկէ Բրինձլու օթևանը։ Հոն Մարգար Ցղնացի վաճառականին բեռներուն մէջ ծրարեցին, որ անձամբ տարաւ Թավրէզ իր վաճառքներուն հետ։ Այդ ամէնը գաղտնի գործուեցաւ։ Ետևէն Փիլիպպոս ալ Թավրէզ իջաւ, և Աջը առաւ Ցղնացի Մարգարին ձեռքէն, և անձամբ բերաւ Էջմիածին 1638 սեպտեմբեր 20'ին Դավրիժեցիին հաշուով, և եղեւ անդ տօն ուրախութեան ամենայն Հայոց, և ցնծութեան տօն կատարուեցաւ* (ԴԱՎ․ 246)։ *Սակայն Փիլիպպոսի Էջմիածին հասնելուն թուականը, Դավրիժեցիին նշանակածէն տարբեր կը գտնենք կաթողիկոսին Իլվովցիներու ուղղած կոնդակին մէջ, ուր 1638 հոկտեմբեր 12'ին կը գրէ․ թէ Երեք օր էր, յորմէ ելեալ էր արքայն ի քաղաքէն Սպահանայ* (ԲԺՇ․ 113), *ըստ այսմ հոկտեմբեր 9'ին, և ոչ սեպտեմբեր 20'ին հասած կ'ըլլայ Էջմիածին, 19 օրուան տարբերութեամբ Դավրիժեցիին նշանակածէն։ Աջին այս վերադարձն ալ, հակառակ իր պաշտօնական պայմաններուն, կատարելապէս կը յիշեցնէ Օձնեցիին գործածած հնարիմաց կերպերը* (§ 1511)։ *Այս անգամ ալ* 26 *տարի Աջը Էջմիածինէ հեռու մնաց, բայց անկէ ետքը այլևս տեղէն չէ խախտուած, և Աջին հետ պահուած կը մնան նաև ևս խաչալէմը և ուրարը, որ միասին Աղթամար տարուած էին* (ԴԱՎ․ 333)։

**1675**․ *Մուրատ Դ Օսմանեան կայսրը, այս օրեր սկսած էր արդէն Պարսից դէմ կրկին պատերազմիլ, բայց*

ՊԱՂՏԱՏԻ ԱՌՈՒՄԸ

*բարեբախտաբար այս անգամ իր արշաւանքը շիտակ Պաղտատի վրայ ուղղած էր, որով Հայաստան ազատ կը մնար ռազմական արհաւիրքներէն։ Մեծ եպարքոս Պէհրամ փաշա Կարսի և Կարինի կողմերուն ամրութիւնները զննելէ ետքը,* 1637 *յունիս* 25'*ին Ամասիա դարձաւ, և անկէ նոր գարնան քալեցուց Օսմանեան բանակը, բայց ինքը ճանպան մեռաւ* 1638 *օգոստոս* 18'*ին, և իր բանակը Պաղտատի առջև հասաւ նոյեմբեր* 15'*ին,* 197 *օրուան*

վատակարեկ գնացքէ ետքը։ Սուլտան Մուրատ եկած էր անձամբ առանձնել հրամանատարութիւնը, և դեկտեմբեր 24՚ին մեծ յարձակում մը կատարեց, և միւս օր 1638 դեկտեմբեր 25՚ին Պաղտատ առնուեցաւ և աւարի մատնուեցաւ, և այն օրէն աղքին Պաղտատ կը մնայ Օսմանեան տիրապետութեան ներքեւ (ԺՈԻ. 236)։ Հայ ժամանակագիր մը Հայոց 1087 թուին դեկտեմբեր 13 երկուշաբթի օր կը դնէ Պաղտատի առումը (ՍԱՄ. 178), որ եթէ հին և նոր տոմարներու տարբերութեամբ ալ հաշուուի, տակաւին ամսաթիւը եօթնեկի օրուան չպատասխաներ, և թուականի շփոթութիւն մը պէտք է ընդունիլ։ Պաղտատի պատերազմին և Աջին վերադարձին թուականները իրարու համեմատելով կը տեսնենք, թէ երկուքը միևնոյն տարւոյ մէջ կատարուած են, սակայն 1638 նոյեմբեր 15՚ին Պաղտատի պաշարումէն առաջ, սեպտեմբեր 20՚ին կամ հոկտեմբեր 9՚ին Փիլիպպոս ամէն բան վերջացուցած, և Աջին հետ ինքն ալ դարձած էր Էջմիածին (§ 1674), ապա թէ ոչ պատերազմական գործերը կրնային իր ձեռնարկին յաջող ելքը արգելել։

**ՓԻՐՕՄԱԼԼԻԻ ԸՆԹԱՑՔԸ**

**1676.** Փիլիպպոս Էջմիածին չհասած, սկսած էր զբաղիլ Լեհահայոց բանի կաթոլիկացման գործովը (§1662), որուն համար իւր նախորդն ալ հոգ տարած էր (§ 1663)։ Յորմէհետէ Նիկոլ՝ Յովհաննէս Խուլի ձեռնտուութեամբ (§ 1669), յաջողած էր Հայերուն դիմումին հակառակ Ուրբանոս Ը պապէն պաշտպանուիլ, և արքեպիսկոպոսական պալիում ալ ստանալ՝ 1633՚ին Իլվով դառնալով, այնչափ սանձարձակ եղած էր, որ Հայ եկեղեցականի համեստ տարազն ալ փոխելով, սկսած էր գործածել գեավուր ճէբրանէ օրտէօ չօր-տընալըն, և մինչեւ իսկ գեավուր օղլօսլ և Բէօլօղ պօղէն (ԲՈՒՆ.157)։ Հռոմէադաւան Նիկոլի և հայադաւանութեան հաւատարիմ ժողովուրդին հակառակութիւնները երբեք վերջ չէին գտած, անիկայ իրեն բնակալ իշխանութիւնը կը վարէր ամէն տեսակ քմահաճ խստութիւններով, և սաստիկ կերպ կերպ խաղեր և դիմադրութիւններ և անհարգական գործեր կը շարունակէին անոր դէմ։ Այսպէս էին գործերը Լեհաստանի մէջ, երբ անդին Էջմիածնի մէջ ալ հռոմէականներու կողմէն փորձեր կ՚ըլլային, նոյն իսկ կաթողիկոսը իրենց կողմը շահելու։ Պօղոս Փիրօմալլի Դոմինիկեան կրօնաւորը, բանտարկութենէն ազատելով (§1659) Էջմիածին էր դարձած 1634՚ին, և լաւ ընդունելութիւն գտած Փիլիպպոսէ, իբրեւ ուսուցիչ օտար լեզուաց և իմաստասիրական գիտութեանց։ Բայց նա առիթէն կ՚օգտուէր լատինամիտ առաջարկներ թելադրել կաթողիկոսին։ Հայոց ծիսական և վարդապետական գիրքերը ուսումնասիրելով անոնց մէջէն իր միտքին յարմար վկայութիւններ կը հաւաքէր, որպէսզի Հայոց եկեղեցին քաղկեդոնական և հռոմէադաւան ցուցնէ։ Սակայն Փիլիպպոս կարճեց անոր առարկութիւնները պատասխանելով, որ Էյէր օյտուր է, և տահա խօշ օյտուր ճանըմ, դէ՛ եօք ընտէսըլ կօռ յընտօռնայն քէօճ (ՉԱՄ.Գ. 614)։ Փիրօմալլի հասկցաւ և համոզուեցաւ թէ հնար պիտի չըլլայ ուղղակի իւր նպատակին հասնիլ, ուստի անուղղակի միջոցներ գործածելու ձեռնարկեց։ Երբոր տեսաւ թէ Հայք խօրչէն յանօանէ Քաշիշտանէ, ինքն ալ այլեւս ուշ յէքչէր ըսնօսն նօրէն, այլ ընտհանրապէս տօրօշէր, այսինքն է Քրիստոսի բնութեանց և Հոգւոյն Սրբոյ բղխման, և ուրիշ նմանօրինակ նիւթերու վրայ կը խօսէր լատինամիտ ուղղութեամբ, և հայերէն գիրքերէ մուրացածոյ վկայութիւններով, առանց Հայոց սկանջը խայթող Քաղկեդոնի կամ Հռոմի անունը տալու, ուզելով այսպէս անոնց միտքերը իւր կողմը պատկեցնել, անզգալաբար և մեղմօրէն։ Սասնկ Հայերն սկսան գոհ մնալ անոր այս տեսակ քարոզութիւններէն, զայն իրենց կողմը անցած կարծելով, և զայն իբր իրենց հաճոյական և ընդունելի անձ կը պատուէին (ՉԱՄ. Գ. 615)։ Դավրիժեցին իսկ գովութեամբ կու տայ անոր անունը, այր էմաաֆուն և երեւելի կոչելով (ԴԱՎ. 295)։ Փիրօմալլիի այդ ուղղութիւնը աւելի ճարտար էր, քան Ունիթորներու մոլեռանդ ընթացքը և յախուռն ձեռնարկները, թէպէտեւ ինքն ալ Ունիթորներու միաբանակից Դոմինիկեան կրօնաւոր մըն էր։ Հաւանական էր որ նա

աւելի յաջողէր իւր այդ չահեցողական, չըսենք խարէական ոճովը, սակայն նա ալ իւր դէմ գտաւ մոլեռանդներու խմբակը։ Փիրօմալլի Էջմիածինէ մեկնելով սկսաւ շրջիլ Հայոց գլխաւոր քաղաքները, իւր ոճով քարոզել Հայ եկեղեցիներու մէջ, և նոյն իսկ Կ-Պոլիս գալով Գալաթիոյ Ս. Լուսաւորիչի մէջ ալ քարոզներ կը խօսէր հայերէն լեզուով (ԲԺՇ. 114), և ընդունելութիւն ալ կը գտնար, Քաղկեդոնի և Հռոմի անուններն լսելու հնարիմաց ճարպիկութեամբը, որուն չէին կրնար թափանցել հասարակ ժողովուրդը և դաւանութեանց տարբերութիւններուն նրբութիւնները հասկնալու կարող չեղողներ։ Զմոռնանք որ քիչ ու շատ լատինական կողմը հակողներ ալ պակաս չեղան։

**1677.** Անդին Իլվովի Հայեր, որ Նիկոլի դէմ պայքար կը մղէին, կ'աշխատէին ամէն պարագայէ օգտուիլ, և բարեդէպ համարեցին Լեհաց և Պարսից թագաւորներուն մէջ դեսպանական յարաբերութեանց պարագան, և յատուկ դիրով, գուցէ և պատուիրակով, դիմեցին Փիլիպպոս կաթողիկոսին, որ Պարսից թագաւորին կողմէ միջնորդութիւն մը ընլայ իրենց համար Լեհաց թագաւորին մօտ։

**ԼԵՀԱՀԱՅԵՐ ԵՒ ՓԻԼԻՊՊՈՍ**

Այդ գիրն է որ Փիլիպպոսի ձեռք հասած կ'երեւի Սպահան եղած ատեն, և Էջմիածին համնելէն երեք օր ետքը պատասխանը կը գրէ 1638 հոկտեմբեր 12'ին։ Փիլիպպոսի կոնդակը ուղղուած է, Իլվովի, Կամենիցի, Եազլովիցի, Զամոսցայի և Լուցկայի Հայ գաղթականութեանց։ Կաթողիկոսը կը յայտնէ թէ շատ տրամեցաւ պատմուածներուն վրայ, դիմում ըրաւ ի դուռն արքային Պարսից, և պահ մը լսեց թէ քանի մը եկեղեցիներ Հայերուն յանձնուեր են։ Կ'աւելցնէ թէ, տեսնուեր է Լեհաց դեսպանին հետ, որ իրեն խօսք տուեր է, թէ երբ դառնայ՝ կը խօսի իրենց թագաւորին և դժուարին է այդ գործ։ Պարսիկ դեսպանին ալ խօսեր է, ինքն ալ գիր մը կը յղէ Լեհաց թագաւորին, կը յիշէ եւս Հայոց նպաստաւոր թուղթ մը Թագաւորէն առ Թագաւորն, և կը կնքէ իւր թուղթը մաղթելով որ Աստուած ողորմեսցէ ձեզ յայդմ դառնութեան վշտաց (ԲԺՇ. 113)։ Փիլիպպոսի կոնդակին Իլվով հասնիլը նշանակուած է 1639 յունիս 25 թուականով (ԲԺՇ. 113), և շաբաթ մը ետքը յուլիս 2'ին կը նշանակուի Փիրօմալլիի Իլվով հասնիլը (ԲԺՇ. 114)։ Սա պաշտօն ընդունած էր Ուրբանոս Ը պապէն Իլվով երթալ, որպէսզի իբր Հայոց լեզուին և եկեղեցական խնդիրներուն հմուտ՝ Հնարեսցէ հաշտութեան առնել ի մէջ Նիկոլի և ժողովրդեան (ԶԱՄ. Գ. 639)։ Իսկ Փիլիպպոս կաթողիկոսի կողմանէ ալ յանձնարարութիւն ունեցած ըլլալը, Դավրիժեցիէն չքաղուիր (ԴԱՎ. 295), ինչպէս ոմանք կարծեցին (ԶԱՄ. Գ. 639)։ Փիրօմալլի իւր ոճին հետեւելով լաւ յարաբերութիւն կապեց Լեհահայերուն հետ, որ մինչեւ իսկ հաւանեցան և ճանապարհի ծախքն ալ հոգալով զայն Հռոմ ղրկեցին, որպէսզի պապին առջեւ իրենց պահանջը պաշտպանէ։ Բայց Նիկոլի և Փիրօմալլիի յարաբերութիւնները լաւ չէին եղած, երկու գլխաւոր պատճառներով, մէկը Նիկոլին խիստ մոլեռանդ ուղղութեան հետեւիլը, և երկրորդ իւր անհատապէս անկարգ և ընդարձակ և ցոփակեաց կեանքը։ Անոր համար Նիկոլ պէտք զգաց անգամ մըն ալ անձամբ Հռոմ երթալ իւր դատը պաշտպանելու, և իւր նպատակին ալ հասաւ։ Պօղոս Փիրօմալլի Հռոմ հասնելով բան ինչ բարեխօսութեան վասն Հայոց առաջնորդին էր (ԴԱՎ. 295), և հարկաւ թելադրած էր իւր մտածած հնարիմաց եղանակը Հայերը շահելու, և լոկ բառերով չխրտչեցնելու համար։ Անշուշտ Նիկոլի հեռացումն ալ օգտակար ցուցած էր գրգռութիւնները մարելու համար։ Բայց Նիկոլի ուղղութիւնը աւելի ընդունելութեան արժանացաւ պապական արքունիքին կողմէ, և մոլեռանդ Նիկոլը խափանեաց զօգնութիւնն Պօղոսի՝ յեպիսկոպոսութեամբ Սուչավայեցւոյն (ԴԱՎ. 295)։

**1678.** Անգամ մըն ալ Նիկոլ յաղթական կ'ելլար իւր կրօնամոլ պայքարին մէջ, և Լեհահայեր կրկին կը դիմէին Փիլիպպոսի օգնութեան, որ երկրորդ կոնդակով մը կը ծանուցանէ

**ՆԻԿՈԼԻ ՁԵՂՏՈՒՄՆԵՐԸ**

1640'ին, թէ Պարսկաստանէ գացող դեսպանը ճանպան սպանուած ըլլալով, գործը անհետեւանք է մնացած, և կ'առաջարկէ

տանէ ի քանիքեան անձինս յղել, որպէսզի անոնց հետ խորհրդակցի ձեռք առնուելիք միջոցներուն վրայ (ԲԺՇ· 114)։ Այդ առաջարկին գործադրուած ըլլալը յայտնի չէ, մինչ յայտնի է Լեհահայերու խղճալի կացութեան շարունակելը դեռ քանի մը տարիներ։ Ժողովուրդը իւր եկեղեցիներէն վտարուած և եկեղեցւոյ խորհուրդներէ և կարևոր ծէսերէ զրկուած, ուխտած էր երդմամբ, ի շրջակայս ամենայն գաւ մանաւանդ՝ տան ի ծառայութեան Նիկոլի (ԲՈՆ· 156), և այդ նպատակով ոչ մի ծախքէ ետ չէր կենար, մինչև որ ապստամբեցոյց ժողովրդեան առհասարակ (ԲՈՆ· 26), և յուսաբեկութեան մատնուելով քաղաքս ար երկիւղածս և վրէժխնդիրս հայրենի օրինաց՝ մերժեան ի տանց և ի տեղեաց, և եղան պանդխտեալս և նժդեհս շրջագայեալք յօտար աշխարհս։ Իսկ Նիկոլ իւր ծախքերը գոցելու համար եկեղեցիներուն գանձատուները գտնուած հարստութիւնները, զեկեղեցեաց և զարքայութեան անօթան և զամենայն ասանդս վանաց ու ցրուեց, զոր կործանեաց, զոր կողոպտեաց, և զոր յետ մեռ Հրէից խորտակեալ սրբոց արձան և կործանեաց, այնպէս որ Լեհահայերու եկեղեցական գանձերը բնաւին կործանեաց և ոչինչ թողաց։ Ասոր հետ մէկտեղ, ինքն իւր վատթար ընթացքը կը շարունակէր, և կոյր էր առաջին կարգաց երբոց, և եւս առաւել անառակ (ԴԱՎ· 296)։ Այդ մասին Լատին պատմագիրը մանրամասնութիւններ ալ կու տայ, թէ առնէր Նիկոլ կոյս մի յաշխարհական տոհմէ, զոր յափշտակեալ էր ի կենաց էրբեմն զկին իւր օրինաւոր, և կը յաւելու, թէ են Նիկոլի ի կնոջէն որդիք յարբունս հասեալք (ԲՈՆ· 160)։ Եւ սա է կաթողիկութեան ախոյեանը, որուն համար պապութիւնն չէր խղճեր քրիստոնեայ և կրօնաւէր ժողովուրդ մը ոտնակոխ ընել, և յանուն կաթոլիկութեան հոգեւորապէս և մարմնաւորապէս հալածել, որպէսզի բռնութեամբ հեռացնէ զայն իւր հայրերուն նուիրական և ուղղափառ դաւանութենէն։ Այդ կացութիւնը տասը տարիէ աւելի տևեց, առանց նոր միջադէպ մը ունենալու, և Փիլիպպոսի ալ առիթ չներկայացաւ այդ միջոցին նորէն Լեհահայերու գործերով զբաղելու, թէպէտ հնար չէր որ միտքէ հեռացնէր իւր հօտին մէկ մասին կրած կրօնական և անտանելի հալածանքը։

1679. Սոյն միջոցին պէտք է նշանակել Սահակ Գառնեցիին մահը, որ ախտաւոր և հիւծած կեանք մը կը վարէր Էջմիածինի մէջ, Փիլիպպոսի խնամքին ներքև (§ 1670)։ Անհնար էր որ իւր արտաքին ցաւերն ու փորձանքները չազդէին Սահակի սրտին վրայ, միտքը բերելով որչափ ինչ ըրած էր, թէ ինքն անձամբ, և թէ իւր հօրեղբօր Մելքիսեդեկի գործակցելով, լոկ անձնական շահերու ու կիրքերու հետևելով, և պատճառ եղած էր եկեղեցւոյն և ազգին կրած վնասներուն։

ՍԱՀԱԿԻ ՄԱՀԸ

Պէտք էր նաև ազդուէր իրենցմէ ետքը եկեղեցւոյն գլուխը անցնող հայրապետներուն, Մովսէսի և Փիլիպպոսի ընթացքէն, որոնք բոլոր ջանքերնին և ոյժերնին և ազդեցութիւննին հանրութեան օգտին կը գործածէին։ Ըստ այսմ եթէ յակամայից ցաւագար, բայց կամաւորապէս ապաշխարող կեանք մը կ'անցընէր, ախտն ալ օր աւուր կը սաստկանար, որուն անունը չէ յիշուած, բայց իբր նկարագիր կը նշանակուի թէ առաջն երկոքին ոտքն նորա, և օր առաւր յաւելեալ առաջոյն, և եղան մինչ ի քորն, և ցաւն այն յոյժ ցաւէր և կոյր վշտացուցանէր զնա (ԴԱՎ· 188)։ Ինքն ալ զգաց թէ այլևս համրուած են իր օրերը, և աղաչեց ու խնդրեց քանալ զինքն և տանել ի տաճար սուրբ Էջմիածնի։ Այնտեղ Իջման տեղւոյն առջև, բազում հառաչանօք և ծնրադրեալ արտօսր և յորդաբուղխ արտասուօք և ցաւագին անձամբ, լացաւ և աղօթեց, աղաչեց ու պաղատեց, ծեր եպիսկոպոս մը կոչելով խոստովանեցաւ, ճանչնալով ինքը զինքը իբր դատապարտեալ ծառայ, մեղուցեալ հոգւով և մարմնով, և հաղորդուեցաւ հաւատով և յուսով, և հոգևորական մխիթարութեան զգացումներով լեցուած, նորէն բերուեցաւ ի տանն յորում կայր հիւանդ, և նոյն գիշեր հոգին աւանդեց, ու եկեղեցական արարողութեամբ թաղուեցաւ ի դիրս գերեզմանացն, միաբանական գերեզմանատան մէջ (ԴԱՎ· 189)։ Դավրիժեցին տարի և օր չնշանակեր, բայց մանաւոր յիշատակարաններու համեմատ 1639'ին կը դրուի մահը, տասնամեայ վտարանդի և առանձնացեալ կեանքէ ետքը (ՁԱՄ· Գ·

609)։ *Մենք ալ կը կրկնենք Դաւրիժեցիին հետ. Տէրն Քրիստոս նորա արասցէ անթառամ պարգեւաւորութեամբն խորով* (ԴԱՎ. 189)։ *Սահակի մահուամբ կը վերջանայ դժպհի ժամանակներու վերջին հետքերը։*

**1680**. *Տասնամեայ միջոց մը կը բացուի առջեւնիս, 1640'էն 1650, որուն մէջ գլխաւոր դիպուած մը չունինք պատմելու, այլ կը շարունակէ Փիլիպպոսի խոհական և շինարար գործունէութիւնը։ Քաղաքական կացութիւնն ալ նպաստաւոր էր, զի Պաղտատի առումէն ետքը, տեւական խաղաղութեան դաշնագիր մը հաստատուեցաւ Օսմանեանց և Պարսից միջեւ։ Պաղտատի պատերազմին ատեն իրաւ պատերազմը Հայաստանէ հեռու էր* (§ 1675), *բայց Թաթարները նիզակակից գունդերը՝ Խրիմէն Պաղտատ գացած ատեննին ասպատակած էին Արարատ նահանգը, և տիրանալու փորձեր ալ ըրած. բայց 1639'ին Տիարպէքիրի մէջ որոշուած երեսնամեայ խաղաղութեան պայմանագիրին մէջ, ապահովուած էր Պարսից պետութիւնը Երեւանի վրայ և այս դաշնագիրը հանդիսապէս վաւերացաւ Կ-Պոլսոյ մէջ 1639 սեպտեմբեր 21'ին, ուր սուլտան Մուրատ դարձած էր յունիս 10'ին* (ԺՈԻ. 237)։ *Երկու պատերազմիկ թագաւորներն ալ շատ չապրեցան անկէ ետքը, Մուրատ Դ մեռաւ 1640 փետրուար 9'ին, և իրեն յաջորդեց եղբայրը Իպրահիմ Ա բնաւորութեամբ թոյլ և կենցաղավարութեամբ մեղկ անձ մը։ Շահ չանցաւ Շահսէֆի ալ մեռաւ 1641'ին, և իրեն յաջորդեց որդին Շահ Աբբաս կամ Շահաբաս Բ տակաւին մանուկ, բայց արբեցութեան և չուայտութեան անձնատուր, որով և ախտերու ալ ենթարկուեցաւ, բնաւորութեամբ ալ թոյլ և տկար եղաւ* (ՏՊէ. 358)։ *Այդ պարագաները նպաստեցին Փիլիպպոսի հանդարտ շինարարութեանց։ Ինքն խորհրդական և հանճարեղ, աշխարհաշէն և արդիւնարար անձ մը, անխոնջ կը հետեւէր նորոգութեանց, ջանալով վերականգնել անցած ժամանակներու մէջ աւրուածները ու քանդուածները, և ինչ որ կը ձեռնարկէր դուռնեբերել արդիւնաւոր անձնայ* (ԴԱՎ. 249)։ *Նախանձաւոր էր նաեւ բարոյական զարգացմանց, ամէն տեղ կարգէր և կանոնադրէր, զարդարող էր եկեղեցեաց և պայծառիչ տանից տէրունականաց, և իր ուղղամիտ և արդար գործերով, ճգնաւորեան և օրինաւորեան կեանքով, խոնարհակեաց և խաղաղասէր երեւոյթով, ամէնուն պատկառանք էր ազդած, նոյն իսկ Մահմետականաց և Վրաց մէջ տարածուած էր համբաւը, և ոչ թէ առաջին, այլ և այլազգեաց և իշխանաց եւ զօրագլխաց, որպէս և պատուէին զնա։ Իր արդիւնարար ձեռնարկներով վաղնջուց խախտեալ կանոնաց յետ ուղղեաց, և գեղք և տաղաւ եղեցան, կարգեալ կեցաւ և խախտեալ եկեղեցիք նորոգեցան, այլև յոլով եկեղեցիք նոր շինեցան։ Գլխաւոր գործերէն մին եղաւ Մովսէս կաթողիկոսէն Յովհաննավանքի մէջ հաստատուած դպրատունը* (§ 1646) *Էջմիածին փոխադրել* (ԴԱՎ. 250), *և անոր աւելի զարկ տալ իր աչքին ներքեւ, ուսուցիչ նշանակելով Սիմէոն Ջուղայեցի վարդապետը* (ԴԱՎ. 312), *Մելքիսեդեկ Վժանեցիին աշակերտներէն։ Նշանաւոր եղան նաեւ Էջմիածինի յարակից Գայիանէի և Հռիփսիմէի վանքերուն նորոգութիւնները, սակայն առաջիկային կը թողունք անոնց մասին խօսիլ։ Այդ միջոցին կ'իյնայ յիշատակագիրի մըն ալ ըսածը, թէ 1647'ին Փիլիպպոս դաւանութեան կաթողիկէն հաւաքեալ 25 եպիսկոպոսներու և 8 վարդապետներու հետ ստորագրելով առաքեաց է Հռոմ ի յետոյ թուղթ Պապին Փիլիպպոս* (ՏԱՇ. 112)։ *Փիլիպպոսի համեմատութեան դէմ բռնած ուղղութիւնը յայտնի է բոլոր իր կեանքէն, այսու հանդերձ ուրիշներու հետ լաւ ապրելու փափաքն ալ և մանաւանդ Լեհահայերու դիւրութիւն մը հարելու ճիգերը ծանօթ են, միացած Փիրոմալիի կազմած՝ Հայերու ականջը խայթող բացատրութիւններէ զգուշանալու ոճին։ Հետեւաբար հնար չէր որ բացարձակ համեմատութեան գիր մը եղած ըլլար այդ նամակը, այլ Հայ եկեղեցւոյ դաւանութեան պաշտպանողական բացատրութիւն մը։*

**1681**. *Այդ զբաղմանց հետ աւելի կարեւոր խնդիր մը սկսած էր տանջել Փիլիպպոսի միտքը, այն է կաթողիկոսական իրաւասութեանց սահմաններուն խնդիրը։ Ծանօթ են արդէն երկու կաթողիկոսական մասնաւոր աթոռները Աղթամարի և Սիսի*

ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑ

մէջ, որոնք հակաթոռութեան կերպարանի ներքև սկսան, սակայն օրինաւորութեանց կերպարան առած էին, Աղթամար Վիրապեցիին օրհնութեամբը (§ 1461), և Սիս՝ սկիզբէն իրեն դէմ

**ԿԻԼԻԿԻՈՅ ԽՆԴԻՐԸ**

վճիռ չարուելովը (§ 1480), որով հանրութեան կողմէն ընդունուած աթոռներ էին։ Երկուքին ալ սահմանները ոչ սկիզբէն և ոչ յետոյ որոշ գծուած չէին, և քաղաքական տիրապետութեանց համեմատ կը փոխուէին իրաւասութեանց վիճակները։ Վերջապէս Մայրաթոռի անկարգ անկանոն կացութիւնը, մանաւանդ վերջին ժամանակներու մէջ, համարձակութիւն տուեր էին միւս աթոռներուն ուզածնուն պէս գործել և ուզած կողմերնուն համար եպիսկոպոսներ ձեռնադրել։ Սիմէոն Սեբաստացի, որ 1633'էն իվեր Կիլիկիոյ կաթողիկոս էր եղած, եւս առաւել կ'ընդարձակէր իւր ձեռնարկները և ձեռնադրութիւնները։ Արդէն Կիլիկիոյ աթոռը հինէն իրաւունքներ կը պահէր Կոստանդնուպոլսոյ քաղաքին և վիճակներուն վրայ (§ 1487), և վերջերս ալ Կեսարացին սերտ յարաբերութիւն կը պահէր Կիլիկիոյ աթոռին հետ, ուսկից առած էր իւր եպիսկոպոսական ձեռնադրութիւնը (§ 1536), և որուն օգնութեամբ փորձած էր պատրիարքական աթոռ դառնալ (§ 1604)։ Կեսարացին ուրիշ պարագաներու մէջ ալ դժուարութիւն չունէր Կիլիկիա դիմել պէտք եղած ձեռնադրութեանց համար, Էջմիածին թէ հեռու էր և թէ պատերազմներուն պատճառով երթեւեկներ դժուարին և վտանգաւոր եղած էին։ Բայց իբր սկզբունք Մայրաթոռի իրաւունքները անարգող չէր, մանաւանդ որ Մովսէս իւր ձեռնասունն էր, Փիլիպպոսն ալ օտար մը չէր։ Վերջին անգամ Սիմէոն Կ-Պոլիս էր եկած Կեսարացիին հետ, 1633'ին պատրիարքութեան գալուն առթիւ (§ 1672), և վերադարձած ատեն Անկիւրիա կը հանդիպի, և այնտեղ Թորոս վարդապետ մը եպիսկոպոս կը ձեռնադրէ, իբր զի Անկիւրիոյ Ղուկաս եպիսկոպոսը մեռած է եղեր (04· ԱՐՐ· 717), և քահանայն և ժողովուրդն տուպեր են որ ձեռնադրէ (04· ԱՐՐ· 718)։ Այս պատճառով խռովութիւն կը ծագի Անկիւրիոյ մէջ, Կեսարացին ալ դժգոհ կը մընայ իր բարեկամին գործէն, խնդիրը Փիլիպպոսին կը հաղորդուի, որ Թորոսը կը բանադրէ, կամ թէ եպիսկոպոսութենէն կը կախակայէ, և Սիմէոնի ընթացքին համար դիտողագիր մը կ'ուղղէ, մեղադրելով աղիկամի և իւր իրաւասութեան վիճակներէն դուրս ձեռնադրութիւն կատարելը (04 ԱՐՐ. 288)։ Փիլիպպոսի գիրը չունինք, միայն անոր իմաստը Սիմէոնի պատասխանագիրէն կը քաղենք։ Փիլիպպոսի թուղթը գրուած կ'ըլլայ, առ ամենայն Արևելեան խումբսն, որ յաշխարհս Կիլիկիա, ի Սիս և ի Բերիոյ քաղաքին (04· ԱՐՐ· 377), իսկ թուականին համար յայտնի յիշատակութիւն չկայ, բայց ուղիղ չերևիր 1634 կամ 1635 թուականը, զոր ոմանք Սիմէոնի նամակին համար նշանակած են (11 ԱՄՍ· 24)։ Ձեռնադրութենէն յետ քանի ամսոյ, Թորոս Կ-Պոլիս կու գայ և Կեսարացիին հետ կը հաշտուի, որ զինքը նուիրակութեան կը ղրկէ։ Թորոս փոքր և նես այլ աւելի շրջելէն ետքը պատրիարքին կը դառնայ, նորէն Անկիւրիա առաջնորդ կը ղրկուի, անկէ Սիմէոն զինքը Սիս կը կանչէ, և նա կու գայ, և անկէ ետքն է որ Փիլիպպոսի գիրը կը հասնի (04· ԱՐՐ· 719)։ Անկէ զատ Կեսարացին Երէցն Երանեալ բանանոցեր կը կոչուի (04 ·ԱՐՐ· 479), որ կը համապատասխանէ մեր Երջանկայիշատակ բացատրութեան, և Կեսարացիին մեռած ըլլալը կը ցուցնէ, որ 1636'ին տեղի ունեցաւ (§ 1672)։ Միւս կողմէն սուլտան Մուրատը դեռ կենդանի կը յիշուի (04· ԱՐՐ. 722), որ 1640'ին մեռած է, և այս հաշիւներով Փիլիպպոսի նամակին Սիմէոնի հասնիլը պէտք է դնել գոնէ 1638'ին։

**1682.** Այդ թղթակցութեան վերլուծութիւնը տալու համար յարմարագոյն կը սեպենք դէմ առ դէմ յառաջ բերել Փիլիպպոսի նամակէն յիշատակուած մասերը և Սիմէոնի պա-

**ՍԻՄԷՈՆԻ ՆԱՄԱԿԸ**

տասխանները։ Սիմէոն իրեն աթոռին համար ամէնէն փայլուն բառերը գործածելէն ետքը, կը բաւականանայ առ Հոգևոր Եղբայրդ մեր տէր Փիլիպպոս կաթողիկոս Հայոց հասցէով, և ոչ իսկ Էջմիածինի աթոռը յիշելով։ Փիլիպպոս սկիզբը սիրոյ վրայ խօսած

*կ'ըլլայ, որուն կը պատասխանէ Սիմէոն խօսքը անոր դարձնելով, և Փիլիպպոսի նամակին ինչ ինչ բառերը խծբծելով։ Գլխաւոր խնդիրը կը յանգի աթոռներու մեծութեան վրայ։ Փիլիպպոս Էջմիածինի աթոռին Ամենայն Հայոց գլխաւոր աթոռ ըլլալը յայտնելու համար իմաստասիրական բացատրութեամբ, սեռի և տեսակի և անհատի առնչութիւնները յիշած կ'ըլլայ, եզրակացնելով թէ* մայրանիստն է հանուրցն փառացն, բայց ոչ հանուրց է մայրանիստն *(04. ԱՐՐ. 38)։ Սիմէոն կը հասկնայ թէ ինչ միտք ունին այդ խօսքերը, այսինքն թէ Էջմիածին* յառաջ է և Սիս վերջին, *կամ Էջմիածին* գլուխ է, և Սիս մարմին*։ Ուստի Լուսաւորիչէ սկսելով կաթողիկոսներու շարքէն քաղուած մը առջեւ կը դնէ, ոչ միշտ ճշդուած թիւերով և թուականներով, հաստեցնելու համար թէ* Ընչեւ ցայսօր կայ հայրապետութեանն հաստատ աթոռ, այսինքն Սիս, և սուրբ Լուսաւորչին Աջն անդ, զի է անդ բնակեցեալ, զի հաճեցաւ ընդ սմա։ *Իսկ Վիրապեցիին կաթողիկոսութիւնը ապօրէն կը դատէ, իբր զի* ամենահնազանդ եղեւ յետ Արեւելեան կողմք ի սուրբ Լուսաւորչի աթոռոյս, և յետնորդեցին բաց կամաց իւրեանց զԿիրակոս կաթողիկոս Խորվիրապեցին զաղաղակաւ։ *Կիլիկեցիներու յաւակնոտ մեծամտութեան մերթ ընդ մերթ երեւան եկող յայտարարութիւնն է, որ հերքուելու իսկ պէտք չունի, զի պատմական պարագաներ շատ որոշ են այդ մասին, և մենք ալ իր կարգին բացատրած ենք (§ 1451)։ Սիմէոն իբրեւ հիմնական փաստ մը առջեւ կը բերէ Գրիգոր Կեսարացիի մէկ յայտարարութիւնը, զոր գրեր է նա Սիս ձեռնադրուած միջոցին։ Այս յայտարարութիւնը, որ ամբողջաբար յառաջ բերուած է (04. ԱՐՐ. 479—482), բնաւ Կիրակոսի մասին չխօսիր, փոխադրութեան չակնարկեր, և ճարտար դարձուածներով Յովհաննէս Այնթապցիի կաթողիկոսութիւնը կը պաշտպանէ, ոչ Էջմիածինի աթոռին դէմ, այլ Պետրոս Կարկառեցիին դէմ, որ Բերիոյ մէջ Սիսի հակառակ կաթողիկոսութիւն կը վարէր (§ 1578)։ Անկէ զատ, շատ յայտնի է Կեսարացիին շարունակ Էջմիածինի հետ յարաբերութիւն պահելը և զայն գլխաւոր աթոռ ճանչնալը, պնդելով թէ՝* Սա Էջմիածնի վերին և երեսփոխան է *(04 ԱՐՐ. 718)։ Առանց այս դիտողութեան ալ, միթէ՞ Կեսարացիին խօսքը այդչափ մեծ վկայութիւն մըն է, որ անով հնար ըլլար լուծել եկեղեցւոյն կենսական խնդիրը. նա ժամանակակից վկայ ալ չէ, և փոխադրութենէն երկու դար ետքն է։ Աւելի ոյժ չունին Ոուբինեանց ժամանակէն կամ փոխադրութենէ առաջ Արեւելեայց Կիլիկիոյ աթոռին հետ յարաբերութիւնները (04. ԱՐՐ. 464), զի ոչ ոք կ'ուրանայ թէ այն միջոցին հայրապետական աթոռը Կիլիկիա էր։ Եթէ Սիմէոնի պատճառաբանութիւնը բան մը արժէր, աւելի Աղթամար կրնար օգտուիլ անկէ, քան թէ Կիլիկիա։ Իսկ դրչութեան արհեստին և երաժշտութեան արուեստին Կիլիկիոյ մէջ ծաղկած ըլլալը, լրջութեամբ խօսուելու փաստ մը չէ. նոյնպէս* Սողոմոն ի Մշոյ և խաչն ի Սսոյ *ժողովրդական առածն ալ (04. ԱՐՐ. 485), որ կաթողիկոսութեան վաւերականութեան հետ կապ մը չունի, և Սիմէոնի ամուր փաստերէ զուրկ մնալը կ'ապացուցանէ։*

ԴԱՐՁԵԱԼ ՆԱՄԱԿԸ

**1683**. *Սիմէոն աւանդական զրոյց մըն ալ կը յիշէ թէ Մովսէս Տաթեւացին առաջարկած ըլլայ Կիլիկիոյ Մինաս կաթողիկոսին, թէ* ես կամիմ կամաւ իմով հրաժարել յիմոյս բաժնէս, բայց զոր տուաք կամաւ և որ հաճէաք, անդ հաստատեցաք *(04. ԱՐՐ. 485)։ Մովսէսի խօսքերը ոչ պատմիչներ գրած են և ոչ գրաւոր յիշատակ մը կայ, որ անոնց իմաստը ճշդէինք, բայց եթէ անոնք Սիմէոնի յառաջ բերածին պէս ալ ըլլան, միայն Մովսէսի աթոռոյ միութեան համար անկեղծ և անշահասէր փափաքը կը հաստատեն, և աւելի ոչինչ։ Վերջնական որոշումը ազգային ժողովով պիտի տրուէր հարկաւ, և ոչ Սիմէոնի նախորդին՝ Մինաս Կարնեցիի ազատ կամքով։ Սիմէոն կ'անցնի պատասխանել Փիլիպպոսի դիտողութեան, թէ* ընդէ՞ր յետնորդութեան առնես ի վերայ վիճակի *(04. ԱՐՐ. 713)։ Իր արդարացման համար յանուանէ կը յիշէ իր նախորդներուն Էջմիածինի վիճակին համար ըրած ձեռնադրութիւնները. Խաչատուր Ուլնեցին՝ Ակնայ վրայ, Տիրատուր Սսեցին՝ Անկիւրիոյ և Կ-Պոլսոյ վրայ, Ազարիա Ջուղայեցին՝ Կարնոյ, Եւդոկիոյ,*

Ամասիոյ, Մարզվանի, Կաֆայի, Խարբերդի, Բաղէշի և Մուշի վրայ, Ցովհաննէս Այնթապցին՝ Մերտինի, Երզնկայի, Մարզվանի, Կոստանդնուպոլսոյ, Ադրիանապոլսոյ, Պուղտանի, Իլվովի, Կաֆայի, Գոնիայի և Կեսարիոյ վրայ, Պետրոս Կարկառեցին՝ Չընքուշի, Մուշի և Եւդոկիոյ վրայ, Մինաս Կարնեցին՝ Մերտինի, Երզնկայի, Սեբաստիոյ, Եւդոկիոյ, և Սուլթանիաստրի վրայ։ Ձեռնադրեալներուն անունները ալ կը յիշէ Սիմէոն, բայց մենք զանց ըրինք, բաւական սեպելով տեղերը ցուցնել, որով կ'որոշուին Էջմիածինի ներքեւ եղող վիճակները։ Սիմէոն կը յաւելու թէ ասոնք միայն իւր գիտցած ու տեսածներն են, և թէ ուրիշներ ալ պէտք է ձեռնադրուած ըլլան Ազարիայէ և Պետրոսէ, երբ Կիլիկիայէ մինչեւ Հին-Ջուղա գացին վասն Երուսաղէմայ դրրանուն (04 ԱՐՐ. 714)։ Սիմէոն թերեւս իրաւունք ունենար ըսել, հայր էմ մինչեւ ցայժմ իւրեն, և ես փորձեմ (04 ԱՐՐ. 713). նախորդներս ձեռնադրեցին, ես ալ կը ձեռնադրեմ. բայց յայտնի է որ եթէ շփոթ ժամանակներու մէջ և երթեւեկներու անհնարութեան առեն Էջմիածինի վիճակներ ստիպեալ դիմեցին Կիլիկիոյ աթոռին, առով բնաւ կանոնական իրաւունք չէր կրնար հաստատուիլ, իսկ Փիլիպպոս պէտք կը զգար ուրիշ բարենորոգմանց հետ այդ կանոնական կարգերն ալ վերանորոգել։ Սիմէոն կ'ուզէ օգտուիլ Լամբրոնացիին գրածէն, թէ կաթողիկոսը ընդ ամենայն տեղիս ունի իշխանութիւն յետ ընտրելոյ եղելոյ, սակայն չմտածեր, որ Լամբրոնացին ազգի մը պես եղող կաթողիկոսին վրայ կը խօսի, և ոչ պատահաբար կաթողիկոս անուն կրողներուն վրայ։ Փիլիպպոսի իբր առարկութիւն կը դիմադրէ՝ Հալէպցի Սիմէոն մը ձեռնադրած ըլլալուն, յանդիմանելով թէ հան նախ զՖերանդ յոկանէ տանն (04 ԱՐՐ. 715), սակայն չյիշեր թէ այն ո՞ր վիճակին համար ձեռնադրուած է, վասնզի խնդիրին հիմը ձեռնադրելոյն վիճակն էր, և ոչ ծննդավայրը։ Սիմէոն կ'անցնի մեղադրել բանադրանք արձակած ըլլալը Թորոսի դէմ, թէ ոչ կ'ըսէ բոլոր Սիսէ ձեռնադրեալներն ալ պէտք էր բանադրէիր, նաեւ վախճանեալն է հող, որ օտրով ողջ (04 ԱՐՐ. 715), ինչ որ լուրջ պատճառաբանութիւն և օրինաւոր տրամաբանութիւն մը չէ։

**1684.** Սիմէոն իւր նպատակին համար բերած փաստերուն չվստահելով, նիւթէն կը շեղի, և կ'անցնի Էջմիածինի աթոռին կողմէն կատարուած գործերը մեղադրել։

**ՄԵՂԱԴՐԱՆՔԻ ԽՕՍՔԵՐ**

Կը սկսի յանդիմանել թէ Համազասպ եպիսկոպոսը զանազան տանջանօք սպաննել տուիք, Մարդակերպ Ճանճի եպիսկոպոսին ականջը կտրել տուիք, Սերկելեցի աբեղային ծածուկ անդամը կտրել տուիք, Գառնեցի աբեղան հաւատքէն ուրացուցիք, Զաքէոս աբեղան փռանկ ընել տուիք, Սահակ կաթողիկոսը և Պօղոս վարդապետը տաճկցնել տուիք, Լեհաստանի Հայերը անհաղորդ և անթաղում թողուցիք (04 ԱՐՐ. 716)։ Սակայն Սիմէոն անհիմն զրոյցներ հաւաքած է, զի Սահակի և Պօղոսի համար ըսածին ճիշդ չըլլալը արդէն յիշեցինք (§ 1656), Լեհաստանի համար ըսածն ալ բոլորովին եղելութեան հակառակ է։ Համազասպ Հաւուցթառեցին իրաւ Մելքիսեդեկ մատնեց, բայց սպանութիւնը յիշուած չէ (§ 1633), իսկ միւսացածներն ալ անծանօթ անուններ են, և Մարդակերպաց եպիսկոպոսը յայտնի առասպել կը տեսնուի։ Փիլիպպոսի կողմէ ակնարկուած սիմոնականութեան ամբաստանութիւնը, այսինքն կաշառքի համար գործած ըլլալը Սիմէոն խապառ կը հերքէ, և իր անունին Սիմէօն, և ոչ Սիմոն ըլլալը կը պնդէ, որ սիմոնականութեան հետ առնչութիւնը հեռացնէ։ Լամբրոնացիէն բերած վկայութիւնը անգամ մըն ալ կը կրկնէ, և Էջմիածինի աբեղաներէն մէկուն՝ Կ-Պոլսոյ մէջ 100 ղուրուշնոց աւետարան մը իբր խաչն և փորձ իւրացներ, Փիլիպպոսին երեսը կը զարնէ, իբրեւ անոր կողմէ կաշառակերութիւն (04 ԱՐՐ. 716), որոնք կարեւորութենէ զուրկ խօսքեր են։ Վերջէն կը հասնի Թորոսի ձեռնադրութեան պարագաները բացատրել։ Կեսարացիին հետ Կ-Պոլիս գացած ատեն, Անկիւրիայի Ղուկաս եպիսկոպոս կը մեռնի, Թորոսը կը ներկայացնեն, բայց չձեռնադրեր։ Դարձին մինակ եղած ատեն նորէն կ'առաջարկեն, ինքն դիտել կուտայ թէ Էջմիածնի ԲԵՄ է Ընկերի տեղոյն, բայց ժողովուրդին պնդելուն վրայ կը ձեռնադրէ,

*այնպէս որ քանի մը հարիւր ուխտաւորներու մեծ կարաւան մը կազմուեցաւ։ Կոստանդնուպոլսոյ Հայկական ժողովուրդ՝ իմանալով Փիլիպպոսի ուղեւորութեան յուզը, փութացին մեծ եպարքոսին դիմել, և պարտաւպատշաճ պաշտպանութեան և պատուասիրութեան միջոցները խնդրեցին իրենց կաթողիկոսին համար։ Օսմանեան կառավարութիւնն ալ հաւանեցաւ տալ նոցա Երուսաղիմական գահով, և նշանակել անոր մօտ Երուսաղիմական ծառայ է դրանէ Երուսաղէմին, որպէսզի ցորչափ նա Օսմանեան հողին վրայ գտնուի, պարտաւպատշաճ յարգանքն ու խնամքն ընծայուի տեղական իշխանութեանց կողմէն։ Յատուկ պաշտօնեան արքունի հրովարտակին հետ հանդիպեցաւ Փիլիպպոսի Կարնոյ մէջ, և անկէ ետքը միշտ անոր ընկերացաւ չարունակ երկու տարի, մինչեւ որ հասոյց Փիլիպպոսը ի աթոռ Էջմիածին, և Մահմատղուլի խան Երեւանի կուսակալէն առեալ թուղթ նշանի և աղաչանաց՝ դարձաւ ի դրան Երուսաղէմին իւրոյ՝ ի Կոստանդնուպոլիս* (ԴԱՎ. 254)։ *Կարինէ Երուսաղէմ ցամաքային ուղեւորութեան մէջ, Փիլիպպոսի հանդիպած քաղաքները որոշակի յիշուած չեն, և ուղեւորութեան տեւողութիւնն ալ ցուցուած չէ, բայց նկատելով որ բոլոր գլխաւոր տեղեր պիտի փափաքէին կաթողիկոսին օրհնութիւնը վայելել, և կաթողիկոսն ալ պիտի ուզէր նորէն հանդիպիլ այն տեղեր, ուր նուիրակութեամբ գտնուած էր, պէտք է ենթադրել, թէ ոչ ուղիղ գիծով կրցաւ յառաջել, և ոչ ալ հասարակ կարաւանի ձամբով կրցաւ երթալ, որով հազիւ 1651 աշունին կրնար Փիլիպպոս Երուսաղէմ համնիլ։ Դաւիթ Եւդոկիացի երէց մը, որ 1651'ին կատարած ուղեւորութիւնը ճիշդ օրագրութեամբ կը պատմէ, նոյն տարւոյ Նոյեմբեր 30'ին հասած է Հալէպ, և անդ տեսած է զհայրն հանուրց ազգաց կաթողիկոսն, և անոր օրհնութիւնը առած, և այն օրեր հոգեւոր տէրն է աթոռ Երուսաղէմ է գացած* (ՏԱՇ. 84)։ *Ուրիշ յիշատակագիր մըն ալ կ'ըսէ, թէ Հայոց 1101 թուին Փիլիպպոս և Ներսէս իրարու հանդիպեցան Բերիոյ մէջ, և ճանոյն է հետ է աթոռ տեղւոյն Երուսաղէմ* (ՏԱՇ. 442), *և պէտք է դիտել որ 1101'ի ամանորը 1651 հոկտեմբեր 10'ին կ'իյնար։ Ըստ այսմ մեծ տօներուն մօտ Երուսաղէմ հասած կ'ըլլան։ Երուսաղէմի պատրիարքը կը գտնուէր այդ միջոցին Աստուածատուր Տարօնեցի, Գրիգոր Պարոնտէրի աշակերտներէն* (§ 1650), *որ անոր յաջորդած էր 1645'ին* (ԲԱՌ. 54), *և իւր նախորդին նման չինարար ձեռնարկներ կատարած, բայց և ծանր հակառակութիւններ կրած, ոչ միայն արտաքիններէն, այլ և ներքիններէն, մինչեւ իսկ զինքն պաշտօնանկ ընելու չափ 1649'ին* (ԱՍՏ. Ա. 338), *պատրիարքութեան բարձրացնելով Եղիազար Այնթապցին* (ԲԱՌ. 55), *այդ յախուռն ձգտումներու և անդադար յուզումներու մարդը, որուն գործերը մեզ երկար պիտի զբաղեցնեն։ Բայց Աստուածատուր կրցաւ կառավարութեան ձեռքով նորէն իւր աթոռը դառնալ 1650'ին* (ԱՍՏ. Ա. 338), *և ինքն էր պատրիարքական աթոռի վրայ, երբ միասին Երուսաղէմ հասան Փիլիպպոս և Ներսէս։ Իրաւ, ինչպէս դիտել տուինք, աւելի մեծ և կարեւոր գործի նպատակով կու գար Փիլիպպոս Երուսաղէմ* (§ 1586), *բայց նա զանց չըրաւ տեղական գործերու ալ մտադրութիւն դարձնել, ներքին բարեկարգութիւններ հաստատել, և պիտանի շինութիւններ կատարել։ Այս կարգին նշանաւոր են Ս. Յակոբեանց տաճարին յատակին սալարկը երանգ երանգ վիմօք, և աւագ խորանի բեմին բարձրացումը* (ԴԱՎ. 254)։ *Փիլիպպոս օտարներու կողմանէ ալ շատ պատուուեցաւ, Տաճիկ կուսակալը, Յոյներու պատրիարքը, ու Լատիններուն վանքին պետը, բազում ոսկով և արծաթով կանթեղ ընդանէին և զարդարէին զնա* (ԴԱՎ. 254)։

ՓԻԼԻՊՊՈՍ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

**1688.** *Երկու կաթողիկոսութեանց միջեւ տիրող գրգռութեանց ջնջումը, և կանոնաւոր յարաբերութիւններ հաստատելու ջանքը, որ վերջ պիտի տար շատ մը անտեղի միջադէպներու, և պիտի դադարեցնէր Սիմէոնի նամակին մէջ արտայայտուած զգացումները, ըսենք, կանխաւ բանակցութեանց նիւթ եղած և միայն որոշման մը պէտքը կը մնար։ Այդ նպատակին պիտի ծառայէր Երուսաղէմի գումարումը. թէպէտ կատար-*

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՒՄԱՐՈՒՄԸ

եալ ծանօթութիւններ չունինք մանրամասնութեանց վրայ, ուստի հատուկտր յիշատակներէ պէտք է քաղենք ինչինչ տեղեկութիւններ։ Մարտիրոս Ղրիմեցիէ գրուած ոտանաւոր մը՝ ներկաներուն թիւն ու անունները կու տայ (ՂՐՄ.)։ Փիլիպպոս կաթողիկոսի հետեւորդ վարդապետներէն կը յիշուին, Դաւիթ Շօշեցի, Բարսեղ Շօշեցի, Ներսէս Տաթեւացի, Առաքել Շառոթեցի, Գաբրիէլ Երեւանեցի, Յոհան Երեւանեցի, Յովհաննէս Մուղնեցի Տիգրանակերտի առաջնորդ, Յոհան Արղնեցի, Մինաս Եւդոկիացի Գաղատիոյ առաջնորդ, Գրիգոր Վանեցի, Աւետիս Վանեցի, Խաչատուր Բաղիշեցի, Թորոս Կեսարացի, և Նիկողոս Կեսարացի։ Ներսէս կաթողիկոսի հետեւորդներէն կը յիշուի միայն Խաչատուր վարդապետ Բերիոյ առաջնորդ։ Թեմակալ եպիսկոպոսներէն կը յիշուին, Սահակ Վանայ, Մարկոս Սամնոյ, Յովհաննէս Ակնայ, Ստեփանոս Մոկաց, Միքայէլ Բաղիշոյ, և Պետրոս Սսոյ։ Երուսաղէմի միաբաններէն Աստուածատուր պատրիարքէն զատ կը յիշուին, Խաչատուր Զնքուշեցի, Առաքել Բաբերդցի, Թորոս եպիսկոպոս և Ոսկիբերան Լեհացի։ Ժողովականաց ամբողջ թիւը եղած է 63, այսինքն 2 կաթողիկոս, 18 վարդապետ, 8 եպիսկոպոս, և 35 կրօնաւոր, որ է աբեղայ։ Քահանաներ եղած են [illegible] և [illegible], իսկ ժողովրդական ուխտաւորներ [illegible] կամ [illegible], որոնք կերպով մը անցած կը նկատուին ի [illegible] ժողովին, իբր զի ընդհանուր ազգային հաւանութեամբ հաստատուեցաւ երկու աթոռներու հաշտութիւնը։

**ԳՈՒՄԱՐՄԱՆ ԳՈՐԾԵՐ**

**1689**. Երուսաղէմի մէջ տրուած որոշմանց և հաստատուած կանոններուն նկատմամբ, Դաւրիժեցիէն ունինք միայն 13 կանոններու պարունակութիւնը, որ կ'երեւի թէ բուն իսկ ստորագրեալ պատճէնը չեն, զի Դաւրիժեցին ալ զորս համառօտէ նշանակեցից նախաբանով յառաջ կը բերէ (ԴԱՎ. 255)։ Յիշեալ կանոններուն ժողովական ոյժ կրնայինք տալ, հիմնուելով Դաւրիժեցիին ժողովոյ [illegible] բացատրութեան, բայց դժուար կը նկատենք ընդհանուր ազգային ժողովի հանգամանք տեսնել Երուսաղէմի գումարումին մէջ, քանի որ ընդհանուր հրաւէրով և ամէն կողմերէ հաւաքուած ժողով մը չէր կազմուածը, որուն մասնակցած են Փիլիպպոսի և Ներսէսի հետեւորդները և Երուսաղէմի վանքը գտնուողները։ Իսկ քահանաներ և աշխարհականներ եղած են՝ պատահմամբ գտնուող ուխտաւորներուն գլխաւորները։ Հետեւապէս աւելի քան բուն և ազգային ժողովական գործ, իբր երկու աթոռներու մէջ համաձայնութեան դաշնագիր մը իրէպ է նկատել յիշեալ 13 գլուխները։ Այսու հանդերձ կը համաձայնինք այդ կանոններուն վրայ՝ պաշտօնական և կանոնական նշանակութիւն տեսնալ։ Իբր զի այդ գլուխներուն գլխաւոր նպատակակէտը եղած է սէր և միաբանութիւն երկոցուն աթոռոց կանոնելով Էջմիածնի և Սսոյ (ԴԱՎ. 255), որպէսզի հնար ըլլայ առջեւն առնել այն անկարգութեանց և զեղծումներու, որոնք տիրած էին երկու աթոռներուն իրարու ձեռքէ իրաւունք և հասոյթ խլելու մրցումէն։ Իսկ անկէ յառաջ եկած հակառակութենէն, կ'օգտուէին անհատներն ալ իրենց ապօրինութիւնները գեղեցկացնելու համար։ Այդ մասին աւելի մեղադրելի էր Սսոյ աթոռը, որ ինչպէս տեսանք Սիմէոնի նամակէն, Մայրաթոռի իրաւունքները և հեղինակութիւնը կ'ուզէր ջնջել, և իրեն համար օգտակար պարագայ մը կ'ըլլար Էջմիածինի աթոռին Պարսիկ տիրապետութեան ներքեւ գտնուիլը, և Պարսիկ տէրութեան Օսմանեանին հետ պատերազմի կամ թշնամութեան մէջ լինելը։ Ասով Սիս կը քաջալերուէր Օսմանեան վիճակներու վրայ ոտնձգութիւններ ընել, և Օսմանցիները գովելու ցոյցերու դիմել, ինչպէս Սիմէոն ալ ըրած էր (§ 1685)։ Այդ զեղծումներուն դարման տանիլը Մովսէս ալ մտածած էր, բայց իրեն անհնար էր եղած երկու տէրութեանց թշնամութիւններուն չարունակելուն պատճառով, իսկ Փիլիպպոս ուզեց օգտուիլ 1639'ին հաստատուած երեսնամեայ խաղաղութենէն (§ 1680), և անով զօրացնել առաջին քայլը՝ զոր առած էր Թորոս Անկիւրացիին ձեռնադրութեան դէմ ելլելով (§ 1681)։ Իսկ անկէ ետքը պէտք եղած էր երկայնամտել, որպէսզի խոհական

Կիլիկիոյ խնդիրը աւարտեց, եմուտ ի Նո-ւ Ժողով [illegible] ի Կոստանդնուպօլիս (ԴԱՎ. 257)։ Բայց մենք պէտք է եա դառնանք Կոստանդնուպոլսոյ անցուդարձը պատմելու, զոր պահ մը աչքէ վրիպեցուցինք,

**ԴԱՒԻԹ ԱՐԵՒԵԼՑԻ**

Կեսարացի Գրիգորի մահէն, այսինքն 1636էն իվեր (§ 1672), այնտեղի գործերուն ինքիր մէջ ձեւ մը առած ըլլալուն պատճառով։ Կեսարացիին յաջորդած էր Զաքարիա Վանեցին, երեք զօրաւոր մրցակիցներուն վերջինը, որ ինքն ալ կրցաւ իւր պատրիարքութիւնը վարել մինչեւ իւր կեանքին վերջը 1639'ին (11 ԱՄՍ. 76), ինչչափ ալ սխալմամբ 1617 տարին կը կարդացուի Իսկիւտարի գերեզմաննոցին մէջ՝ իւր տապանագիրին վրայ, որ դար մը ետքը գրուած կամ գրուած է, և Զաքարիայի իւր կենդանութեան նուիրած խաչին թուականը՝ չփոթուած է մահուան թուականին հետ (11 ԱՄՍ. 78)։ Զաքարիայի վերջին պատրիարքութեան միջոցն ալ առանց նշանաւոր եղելութեան անցած է։ Թէպէտ Զաքարիայով վերջացաւ երկարատեւ պայքարի մը շրջանը, սակայն Կ-Պոլիս հանդարտութիւն չգտաւ, վասնզի Հռոմի կողմէն աւելի սաստիկ կերպով գրգռուեցան արեւելեան հնաւանդ քրիստոնէութիւնը արեւմտեան նորաձեւ քրիստոնէութեան ձուլելու ճիգերը։ Այդ նպատակին աւելի հետամուտ եղողն էր Ուրբանոս Ը պապը, որ 1626'ին Պետրոս Աւիտաբոլ (Pietro Avitabole) Թէատինեան կրօնաւորին գլխաւորութեամբ, քարոզիչներ յղած էր Կովկասի երկիրները (ԿԱՂ. 120), Վրաց և սահմանակից Հայոց մէջ համէականութիւն տարածելու պաշտօնով։ Անոր Գործակից յղուեցաւ 1636'ին Կղեմէս Կալանոս Սորենտացի (Elemente Galano da Sorrento) (ԿԱՂ. 173), ուրիշ Թէատինեան կրօնաւոր մը, որ հազիւ տարիէ մը 1637'ին հասեր էր իւր տեղը (ԿԱՂ. 175), և երեք տարիի չափ այն կողմերը մնալէ և հայերէն սորվելու աշխատելէն ետքը 1640'ին հրաման առացաւ Կոստանդնուպոլիս անցնիլ, իբր [illegible] Հայոց ազգին, ինչպէս ինքն կը գրէ (ԿԱՂ. 179)։ Կ-Պոլսոյ մէջ Զաքարիայի մահուանէ ետքը պատրիարքութեան ընտրուած էր Դաւիթ Արեւելցի, նուիրակ Էջմիածինի և հայադաւանութեան ջերմ պաշտպան, Կեսարացի Գրիգորի ուղղութեան հետեւող։ Սակայն չէր վերջացած լատինասէրներու խմբակը՝ Խուլին հետեւողներուն մնացորդներով կազմուած, որոնք իրենց նպատակին աշխատելէ չէին դադարած, այն է նախապէս պատրիարքութեան տիրանալ, որ յետոյ իրենց միտքը կարենան իրականացնել։ Իսկ պատրիարքութեան տիրանալու միջոցներն էին, պետական անձերը շահելու կերպեր և առատաբար կաշառքներ։ Պետական պաշտօնեաներէն ալ իւրաքանչիւրը՝ ունէր իւր Հայազգի սեղանաւորը, իբրեւ գանձող և իբրեւ միջնորդ, և պաշտօնէից փոփոխութեամբ շատ դիւրին կ'ըլլար պատրիարք ալ փոփոխել։ Ըստ այսմ Դաւիթ Արեւելցիի հակակիրներուն դժուար չեղաւ, օր մը զայն գահընկէց ընել, և իրենց մտերիմներէն Կիրակոս Երեւանեցին պատրիարքութեան բարձրացնել 1641'ին (ՁԱՄ. Գ. 622)։ Անոր օրով Կալանոս Կ-Պոլիս կը հասնի (ԿԱՂ. 179)։

**ԿԻՐԱԿՈՍ ԵՐԵՒԱՆԵՑԻ**

**1693.** Կալանոս երկու միջոցներ գործածեց Հայերուն մօտ ընդունելութիւն գտնելու և տակաւ անոնք շահելու համար, գործակցութեամբ այն խմբակին, որուն լատինասէր ուղղութիւնը արդէն ծանօթ էր։ Ղալաթիա թաղին մէջ, եւ կաթոլիկութեան ջերմ պաշտպան՝ Տըլահէյ (Jean de la Haye) գաղղիական դեսպանին հովանաւորութեամբ, ուսուցչութեան սկսաւ լեզուական և գիտական նիւթերու, և իւր հայախօսութիւնը մեծապէս կը նպաստէր Հայ աշակերտներ շատցնելու իւր շուրջը, քանի որ Հայերն ալ եւրոպական ուսմանց ծարաւի էին և կարօտ կը քաշէին։ Միւս միջոցն եղաւ իւր քիչուշատ բժշկական հմտութիւնը, որով դեղեր կը պատրաստէր, և հիւանդներ կը մատակարարէր բաւական յաջողութեամբ։ Կալանոսի աշակերտողներուն մէջ Հայեր ալ կային, և յանուանէ կը յիշուին Խաչատուր Սեբաստացի, Թովմաս Բերիացի և Պօղոս Տիվրիկցի վարդապետներ, որոնց Կալանոս գիտութեանց

*կերպարանին ներքև հռոմէադաւան թելադրութիւններ ալ կ'ընէր, և սկոլաստիկեան արուեստակեալ ձևերով դաւանական կէտեր կը բացատրէր՝ Հայ եկեղեցւոյ դաւանութեան հակառակ։ Կալանոսի աշակերտներուն միջոցով Կիրակոս ալ Կալանոսով կը հետաքրքրուէր, յարաբերութեան ալ կը մտնէր, դաւանական կէտերու մասին կարծիքներ կը հարցնէր, բայց միշտ գրաւոր կերպով, երես առ երես տեսութենէ զգուշանալով, կասկածելի չըլլալու համար։ Այդ յարաբերութեանց յատուկ միջնորդն էր Յովհաննէս վարդապետ մը, որ Հռոմի մէջ ուսմունքը լրացնելէն ետքը Արեւելք ղրկուած էր։ Կալանոս կը գրէ թէ Կիրակոս այնչափ հիացած էր իր հմտութեանը վրայ, որ զինքն Նոր Աթանաս մը և նոր Նոր Կիւրեղ մը կ'անուանէր, և Հայերը կը քաջալերէր իրեն մօտ աշակերտիլ և զարգանալ* (ԿԱԼ. 179)։ *Կիրակոս Կալանոսի հետ տեսակցելու բուռն տենչը գոհացնելու համար, օգտուեցաւ Ասիակողման վիճակներու այցելութեան եյլելու առիթէն, և երբ Իւսկիւտար անցաւ, իբր թէ հիւանդացաւ, և լատին կրօնաւոր բժիշկը դարմանի համար բերել տուաւ։ Այն տեղ Կալանոսի լաւ ընդունելութիւն կ'ընէ և գիշերելու կը պահէ, և երբ, կը գրէ Կալանոս, պատրիարքին մարդիկը արբեցութեամբ կը քնանային, մենք իրարու հետ, իր հօրը և եղբօրը ներկայութեամբ, հաւատքի խնդիրներով կը զբաղուէինք* (ԿԱԼ. 179)։ *Միեւնոյն գիշեր հաւատոյ դաւանութեան գիր մը կը պատրաստէ Կալանոս, զոր Կիրակոս կը ստորագրէ, գիր մըն ալ Գաղղիոյ դեսպանին որ գիրը պապին հասցնէ և իր կողմէն ալ միջնորդէ, այն խոստմամբ, որ երբ պատեհը գտնէ բոլոր ազգը հռոմէադաւանութեան առաջնորդէ։ Այդ նպատակով Կիրակոս պապէն կը խնդրէր ալ որ Կալանոսը Կ-Պոլիս թողու և պէտք եղած միջոցները շնորհէ։ Այդ օրուան գրութեան թուականն է* 1641 *նոյեմբեր* 5 (ԱՋԱ. 125), *իսկ Փրոբականտայի գահերէցին կողմէն Կիրակոսին ուղղուած պատասխանը* (ԿԱԼ. 180), *և Կալանոսի ուղղուած հրամանագիրը* (ԿԱԼ. 128) 1742 *մայիս* 21—31 *թուականը կը կրեն։ Կիրակոս Երեւանեցիին այդ գիրը հռոմէադաւաններու կողմէն մեծ շփաստ մը կը սեպուի իրենց ուղղութեան* (ԱՋԱ. 123)։ *Սակայն պատրիարք մը, որ իր ժողովէն և ժողովուրդէն ծածուկ, գիշերուան խաւարին մէջ, օտարազաւանի մը թելադրանքին վրայ, գաղտնի գիր մը կը ստորագրէ, աւելի իր կոչումը խարդաւանողի և իր պաշտօնը մատնողի կերպարանն ունի, քանի որ գաղտնի գրածը յայտնի չդաւանիր, և գրածին հակառակ ուղղութեամբ պաշտօնը կը շարունակէ։*

**1694**. *Կիրակոս Կալանոսէ խնդրած էր, որ Ղալաթիայէ Ստամպոլի կողմը անցնի, այն տեղ հօծ Հայութեան մէջ իր ուսուցչութիւնը շարունակելու։ Այս առաջարկը Կալանոսը խրտչեցուցած էր, զի Լատին կրօնաւորներ մինչև այն ատեն Կ-Պոլսոյ կողմ անցած չեն եղեր։ Ուստի խորհրդակցելով Յովհաննէս Ուռհայեցի՝ Տիարպէքիրի արքեպիսկոպոսին հետ, զոր Կիրակոս տեղակալ էր թողած, կ'որոշէ աչքի չզարնելու համար, իր տարազն ալ փոխել, և Հայ վարդապետի պէս զգեստաւորուիլ, որ ոչ ոք ու որածայր ընթեռցէն ղար՝ առաջի հոգեւորաց ղար չէր տարբերելը, կ'ըսէ ինքն* (ԿԱԼ. 180), *և ոչ թէ չէեցա-չյէ Հայոց վարդապետ՝ բայց է ընդհանուր* (ՁԱՄ. Գ. 623)։ *Ըստ այսմ Կալանոս* 1642*'ին սկիզբները կը հաստատուի Ստամպոլի կողմը պատրիարքարանի մէջ, ուր ազատաբար և բազմաթիւ աշակերտներ հաւաքեց իր շուրջը, միշտ լեզուական և գիտական ուսմանց անունով, իսկ գաղտնի՝ դաւանական ներշնչումներով։ Պատրիարքարանի տեղւոյն համար ընդհանուր կարծիքն էր թէ ճիշդ* 1641*'ին, Կիրակոսի պատրիարքութեան սկիզբը, պատրիարքարանը Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցիէն Գումքաբուի Ս. Աստուածածին եկեղեցին փոխադրուած ըլլայ* (01 ՕՐԱ. 94)։ *Իսկ Սամաթիոյ եկեղեցիէն առաջ շատ հաւանական է որ Յովակիմ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչը նստած ըլլայ, վասնզի այն ատեն Հայերը ուրիշ սեփական եկեղեցի չունէին, և Ղալաթիա ալ մինչեւ վերջը առանձնաշնորհեալ և նախապատիւ դիրք մը կը պահէր։ Գումքաբուի եկեղեցւոյն շինութիւնը աւելի կանուխ*

**ԿԱԼԱՆՈՍԻ ՃԱՆՔԵՐԸ**

տեղի ունեցած էր 1610'ին, Յովհաննէս Խուլին պատրիարքութեան օրով (§ 1597), և հաւանականագոյն կը կարծենք, պատրիարքարանի տեղափոխութեան թուականը 1641'էն առաջ տանիլ։ Միւս կողմէ յայտնի ըլլալով Խուլին և Կիրակոսի միեւնոյն կուսակցութեան կամ ուղղութեան պատկանիլը, անտեղի չէր ըլլար հետեւցնել, թէ ասոնց միտումն եղած է իրենց յարմար նոր կեդրոն մը կազմել, առջի կեդրոնին իրենց ուղղութեան համամիտ չըլլալուն պատճառով։ Ըստ այսմ 1610'է 1641 պատրիարքարանի կեդրոնը ընդհանրաբար յետ և յառաջ տեղափոխուած կ'ըլլայ, մինչեւ որ վերջնականապէս Նոր կեդրոնին մէջ կը հաստատուի։ Ամէն առթի մէջ Կալանոս լատին կրօնաւորին Հայ վարդապետի տարազով լատինականութիւն ներշնչելը՝ ընդհանուր տժգոհութիւն գրգռեց Հայոց մէջ, և Կալանոսի կացութիւնը դժուարացուց, ինչչափ ալ տեղակալ Ուռհայեցին զինքը կը հովանաւորէր, և Կալանոսի երեք հաւատարիմները՝ Խաչատուր և Թովմաս և Պօղոս (§ 1693), կը պնդէին թէ Կալանոսի պաշտօնն է գիտութիւններ և մակածութիւններ սորվեցնել մահմետական կրօնքին դէմ, և Հայոց քրիստոնէութեան պաշտպանութիւն ընել (ԿԱԼ. 180)։ Երբ ինքն Կալանոս ալ այն կողմէ քաշուիլ կը մտածէր, ժանտախտէ կը բռնուի և Ղալաթիոյ կողմը Լատինաց հիւանդանոցը կը փոխադրուի, որդեօ ղէ կ'ըսէ, իմիններէս հեռու տանց իմ եկեղեցւոյ խորհուրդներուն չմտնէ։ Սակայն 15 օրէն կը բժշկուի, և հիւանդութեան պարագայն գրգռութիւնները չիջուցած ըլլալուն, նորէն պատրիարքարանի կողմը կը դառնայ։ Այսպէս կ'անցնի 1642 տարին, մինչև որ Կիրակոս տարւոյ մը շրջագայութենէ ետքը Կ-Պոլիս կը դառնայ, և հազիւ թէ վերադարձին համար խնդակցութիւններ կ'ընդունի, ժանտախտէ կը բռնուի և երեք օրէն կը մեռնի, տակաւին 40 տարեկան (ԿԱԼ. 181), և կը թաղուի Պալըքլըի գերեզմանատունը (ՋէԼ. 51)։ Ամսաթիւը որոշ չենք գտներ, բայց 1642 սեպտեմբերին կը հաշուենք։ Բարոզ մը միայն կը յիշուի իրմէ գրուած, բայց ձեռագիր և անծանօթ մնացած է (ՏԱՇ. 840), որով չենք կրնար գնահատում մը կազմել։

**1695.** Երբ Կալանոս և իրեններ տխուր էին Կիրակոսի մահուան վրայ, կը մխիթարուին Խաչատուր Սեբաստացիին, նոյն իսկ Կալանոսի աշակերտին՝ պատրիարքութեան ընտրուելովը, որով լատինասէրներու երկդիմի ընթացքը կը յաջողի շարունակել։ Գաղղիոյ դեսպանն ալ յատուկ պատգամաւորով իւր խնդակցութիւնը կը յայտնէ, որուն շնորհակալութիւն կը փոխարինէ Խաչատուր՝ իւր որդւոյն ձեռքով, իբր զի այրիութենէ ետքը ձեռնադրուած է եղեր (ԿԱԼ. 180)։ Խաչատուրի տրամադրութիւնները յայտնի ըլլալուն, Հռոմ ալ կը փութայ Փրօբականտայի գահերէցին ձեռքով 1642 նոյեմբեր 26—6 դեկտեմբեր թուականով շնորհաւորութեան նամակ ուղղել Խաչատուրին։ Միեւնոյն թուականով գիր մըն ալ կ'ուղղուի Յովհաննէս Ուռհայեցիին տեղապահութեան ատենը, որ օգոստոսի մէջ պատրաստականութեան յայտարարութիւն գրած է եղեր Հռոմ։ Երկու նամակներն ալ յատուկ յանձնարարութիւններ կը պարունակեն, որպէս զի ճշդիւ գործադրեն, ինչ որ հայր Կղեմէս Կալանոս Հռոմէ ստացած հրահանգին համեմատ իրենց պիտի առաջարկէ (ԿԱԼ. 181)։

ԽԱՉԱՏՈՒՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ

Այդ Խաչատուր Սեբաստացին է որ ուրիշներէն Գաղատացի կը կոչուի, և Մինտէրճի մականունով ճանչցուած է, և որ 16 տարի ետքը Կիլիկիոյ կաթողիկոս ալ եղաւ։ Խաչատուրի պատրիարքութեամբ լատինասէրներուն զգացած ուրախութիւնը շատ կարճատեւ եղաւ, վասնզի Հռոմի նամակները դեռ Կ-Պոլիս չհասած, Դաւիթ Արեւելցին հապճեպ շտապով հասաւ Հալէպէ, ուր վտարուած էր Կիրակոսի օրով, պէտք եղած միջոցները գործածեց և պատշաճ վճարումներն ալ ըրաւ, և կրցաւ Խաչատուրը գահընկէց ընելով, նորէն գրաւել պատրիարքական աթոռը, ուսկից իբր տարիուկէս առաջ հեռացուած էր։ Դաւիթի պատրիարք ըլլալը՝ գործերուն ուղղութեան փոփոխութիւնն էր։ Հազիւ թէ նա պատրիարքարան կը մտնէ, Ուռհայեցին ու Կալանոս մասնաւոր սենեակներ կը քաշուին, Յովհաննէս

*Ուռհայեցին յանկարծամահ կը վախճանի* (ԿԱԼ. 181), *և Պալըքըլը կը թաղուի* (ՁԷԼ.51), *և Կալանոս՝ լատինասէրներուն խումբէն Իսկէնտէր չէլէպիի տունը կը քաշուի Թովմաս Բերիացիի հետ, որ Իսկէնտէրի պաշտպանեալն էր։ Բայց Դաւիթ լսելով՝ զիրենք հանդարտ չթողուր, և Կալանոս Թումքաբուի կողմը թողլով նորէն Գալաթիա կը դառնայ իրեն հետեւորդներուն հետ, լատիններուն և դեսպանատան մօտ, և անշուշտ Հայ վարդապետի տարազն ալ կը թողու։ Այդ պարագային գրած է Թովմաս հռոմէադաւանութեան յայտարարութիւն մը, եւ զայն Հռոմ յղած, որ* 1643 *փետրուար* 12 *թուականով գրուած է* (ԿԱԼ. 183), *և ըստ այսմ Խաչատուրի պատրիարքութեան տեւողութիւնը հազիւ քանի մը ամիս եղած կ'ըլլայ։ Հռոմէ Խաչատուրի եւ Յովհաննէսի ուղղուած գիրերուն անհետեւանք մնալուն վրայ, նոր յանձնարարութիւն մը կը գրուի Թովմասի* 1643 *յունիս* 3—13 *թուականով, որպէս զի հռոմէադաւանութեան համար աշխատի* (ԿԱԼ. 183), *հարկաւ ծածուկ հնարքով, զի Թովմաս պաշտօնապէս իւր յարաբերութիւնը չէր խզած հայադաւան եկեղեցիէն, եւ լատինասէրներուն ջանքն էր հետզհետէ զօրանալով Հայ պատրիարքութեան տիրապետել, եւ անկէ ետքը նպատակնին գործադրել։*

**ԿԱԼԱՆՈՍԻ ՀԵՌԱՆԱԼԸ**

**1696**. *Խաչատուր պահ մը Կ-Պոլսէ հեռանալէ ետքը, նորէն գաղտնապէս եկած էր, Կալանոսի մօտ ապաւինած, ուր այս երկուքը եւ Թովմաս Բերիացին ու Պօղոս Տիվրիկցին ալ անոնց հետ, խորհրդակցութեան կը պարապէին, և միջոցներ կը պատրաստէին Դաւիթը պատրիարքութենէ գահընկէց ընելու։ Դաւիթ լուր առաւ անոնց ըրածին վրայ, և որովհետեւ քանի մը Հայ եկեղեցականներուն լատին կրօնաւորի մը հետ գաղտնի խորհուրդի մէջ գտնուիլը՝ շատ զօրաւոր ամբաստանութիւն էր կառավարութեան աչքին, ուստի պետական պաշտօնէից ձեռքով տունը պաշարել տուաւ՝ չորսն ալ ձերբակալել տալու համար, բայց Խաչատուր ու Թովմաս ու Պօղոս կրցան խոյս տալ ատենին, և Կալանոս միայն ձերբակալուեցաւ։ Գաղղիոյ դեսպանը լուր առնելով, փութացուց իր պաշտօնեաները, որոնք կաշառքով գոհացուցին Տաճիկ պաշտօնեաները աչուըննին գոցել կամ ուրիշ կողմ դարձնել, որպէսզի Կալանոս կարենայ փախչիլ, և դեսպանատուն ապաստանիլ։ Սակայն դեսպանն ալ համոզուեցաւ որ Կալանոսի դիրքը հիմնապէս խախտուած է Կ-Պոլսոյ մէջ, և պիտի չկարենայ օգտակար ըլլալ ոչ Հռոմի կրօնական ազդեցութեան և ոչ Եւրոպիոյ քաղաքական ազդեցութեան, ուստի Գաղղիոյ ու Վենետիկի դեսպանները համաձայնութեամբ զինքն նաւ դրին ու Հռոմ դարձուցին, ուր հասաւ երկամսեայ նաւագնացութեամբ, Ջմիւռնիա հանդիպելէ և Լիվօռնօ* (Livorno) *ցամաք ելլելէ ետքը։ Իրեն հետ նոյն նաւով Եւրոպա եկած են, Յովհաննէս՝ Կիրակոս պատրիարքի հայրը, Զաքարիա դպիր, և ուրիշ երեք Հայեր* (ԿԱԼ. 184)։ *Կալանոս իւր ուղեւորութեան թուականները չյիշեր. սակայն* 1643'*ին աշնան ատեններուն պէտք կ'ըլլայ հաշուել Իտալիա հասնիլը։ Կալանոսի մեկնելէն ետքը այլեւս Խաչատուր Սեբաստացիի անունը չյիշուիր Կ-Պոլսոյ անցուդարձին մէջ, և կ'երեւի թէ գործէ քաշուած է։ Իսկ Թովմաս Բերիացի Հռոմէ ստացած յանձնարարութեան հպատակելու եռանդով՝ աշխատեցաւ իւր կուսակցութեան հետ Դաւիթի դէմ պայքարը շարունակել, և մեծամեծ խոստումներով յաջողեցաւ գահընկէց ընել տալ, և ինքն պատրիարք հռչակուիլ, սակայն աթոռին ստացութեան չկրցաւ մտնել, չկարենալով խոստացած գումարները վճարել, զոր իրեններն ալ չկրցան կամ չուզեցին հանգանակել։ Անոր համար լռելեայն Կ-Պոլիսէ մեկնեցաւ և Հռոմ գնաց, յուսալով այն տեղէն նիւթական օգնութիւններ ալ գտնել, և անով յաջողիլ։ Թովմասի մեկնելուն առթիւ ուրիշ Հայեր ալ Հռոմ մեկնած են, և անոնց մէջ կը յիշուին, Կարապետ՝ Կիրակոս պատրիարքի եղբայրը, և Յովհաննէս վարդապետ՝ զոր յիշեցինք իբր Կալանոսի և Կիրակոսի միջնորդ* (§ 1693)։ *Թովմասի անուանական պատրիարքութիւնը կը հաշուուի* 1644 *տարւոյ մէջ։ Կալանոս մնացած է Հռոմ, իբրեւ ուսուցիչ Հայերու և Արեւելցիներու, որոնք գտած ընդունելու-*

*թենէն քաշքշուած կը յաճախէին Հռոմ երթալ, և դաւանական յայտարարութեամբ մը դիւրութիւններ և պաշտպանութիւններ կը վայելէին* (ԿԱԼ. 184)։ *Կղանոս աշխատած է գրական երկասիրութիւններ ալ պատրաստել հայերէն և լատիներէն լեզուներով, Հայոց լեզուին և պատմութեան և վարդապետութեանց մասին, որոց գլխաւորն է, Մխիթարութիւն Հայոց սուրբ եկեղեցւոյն ընդ մեծի սուրբ եկեղեցւոյն Հռոմայ, երկամասնեայ և ստուար գործը, զոր աւարտած է* 1651 *մայիս* 23—2 *ապրիլին Հռոմի մէջ* (ԿԱԼ. Ի), *և տպագրութեամբ հրատարակած։ Միակողմանի ուղղութեամբ և անձկամիտ տեղեկութեամբ յօրինուած գործ մըն է, որուն գրածները Հայ հռոմէականներէ իսկ խստիւ քննադատուած են* (ՉԱՄ. Գ. 624)։

**1697**. *Դաւիթ Արեւելցի, որ իբրև գահընկէց մինչև Կիպրոս վտարուած էր, անմիջապէս ետ դարձած էր Թովմասի անյաջողութիւնը լսելով, և դիւրաւ ձեռք ձգած պատրիարքական աթոռը։*

**Կ-ՊՈԼՍՈՅ ԳՈՐԾԵՐ**

*Թէպէտև լատինամիտները հրապարակի վրայ ակարացան, և ձախողեցան Հայերը հռոմէադաւան դարձնելու գործին մէջ, բայց պայքարը չարունակեց Հռոմի հովանաւորութեամբ և օժանդակութեամբ և ներքին կացութիւնը միևնոյն մնաց՝ իշխանաւորներու և եկեղեցականներու մէջ արմատացած անձնական խնդիրներու և բուռն հակառակութեանց պատճառով։ Այդ կացութեան ընդաղօտ մէկ նկարագիրը կու տայ Դավրիժեցին, և սկիզբը* 1652*'էն* 18 *տարի ետև կը տանի* (ԴԱՎ. 259), *այսինքն է մինչև* 1634 *կը հասցնէ, որ է ըսել մինչև Փիլիպպոսի կաթողիկոսութեան սկիզբները և Գրիգոր Կեսարացիի վերջին պատրիարքութիւնը։ Սակայն մենք անկէ առաջ ալ տեսանք խառնակութեանց տիրելը։ Այդ չփոթներուն գլխաւոր պատճառներէն մին եղած է, Կ-Պոլսոյ մէջ հինէն հաստատուած գլխաւորներուն, և հետզհետէ նոր եկողներուն մրցումը։ Վերջինները գաւառներու մէջ կուսակալներու հետ մտերմութիւն կը ստանային, և կուսակալներուն բարձրանալովը իրենք ալ ազդեցութիւն կը չատցնէին, որով Կ-Պոլսոյ հիներուն նախանձը կը չարժէին, որոնք Բարձրով և Բարձրայոյն պատուանօք նոր եկողները էֆէնտի չէլէպի և աղայ ունէին, և ազգային գործերու մէջ ալ ընկալուածք էին ծոց փեշեալ անհաղորդ դաշէին, թէպէտև ասոնք զօրաւոր ըլլային գաւառէ փոխադրուած եպարքոսներուն մօտ* (ԴԱՎ. 257)։ *Այսպէս Կ-Պոլսոյ մէջ ազդեցիկ իշխանաւորներ դարձած էին Վանեցի խօջա Ռուհիջան և Տիարպէքիրցի խօջա Երեմիա, որոնց անունները տուած ենք գաւառի գործերուն մէջ* (§1656)։ *Այդ նախանձընդդէմ մրցակցութիւնը նոյն իսկ լատինամիտ պայքարներուն մէկ չարժառիթը կը կազմէր։ Խռովութիւններուն պատճառներէն մէկ ուրիշն ալ պատրիարքներու ստէպ և անհարկի փոփոխութիւններն էին, որով խաղմաւորեն և խառնակուեն ի ժողովրդականաց, իրենց կիրքէն և յամառութենէն դրդուած քամահրել լինէին, ոմանք ի վերայ այսմ, և ոմանք այնմ առաջնորդի, և յաջողելու համար փոյթն ի չարս յուզեն, և վանէին զմիմեանս։ Այս պատճառով երբեմն խոստումներով, և երբեմն փոխառութեամբ, պարտքեր կը կազմէին, և յետոյ պատրիարքական փոփոխութեանց պատճառով իրարու վրայ կը թողուին։ Այս կերպով* 40,000 *ղուռուշի պարտք մը գոյացած էր, որ ընդհանուր ազգին վրայ կը ծանրանար, և ոչ ոք կ'ուզէր վճարել։ Դաւիթ Արեւելցին պատրիարքութեան անցած էր, բայց խռովութիւնը չէր դադարած, ինքն ալ անձեռնհաս կը գտնուէր զայն վերջացնել։ Անոր համար որք եպիսկոպոսք և վարդապետք, եկեղեցականք և երէցփոխք՝ հեռաւոր էջմիածինին կը դարձնէին աչուրնին, և պատուիրակներով ու նամակներով Փիլիպպոս կաթողիկոսին կը դիմէին կնճիռը լուծել և խաղաղութիւն հաստատել իր իշխանութեամբ։ Կացութիւնը աւելի դժուարացաւ, երբ Դաւիթ իբր 5 տարի ալեկոծեալ պատրիարքութենէ ետքը, վերջապէս պաշտօնանկ հռչակուեցաւ* 1649*'ին, սակայն զինքն վար առնողներն ալ ուրիշ մը չկրցան տեղը դնել, և պատրիարքարանը մնաց առանց պատրիարքի, և իշխանաւորներէն քանի մը հատը, Տեղակալ անունի ներքև իրենք սկսան վարել պատրիարքարանի գործերը։ Փիլիպ-*

պոս այս լսելով ուզեց միջամտել, երբեմն խնդրելով և երբեմն մուրս ողորկելով, և այլ կերպիւ հնարս հնարելով, բայց ոչ եղեւ խաղաղութիւն (ԴԱՎ. 259)։ Ուզեց անձամբ Կ-Պոլիս գալ, բայց ուրիշ կարեւոր և քիչուշատ պատրաստուած գործ մը կը ստիպէր զինքն Երուսաղէմ երթալ, ուստի չատացաւ խոստանալով որ Երուսաղէմի գործը աւարտելով Կ-Պոլիս կու գայ։

**ԳՈՒՄՔԱՓՈՒԻ ՀՐԴԵՀԸ**

**1698**. Անցողակի յիշենք այստեղ Դաւիթի պատրիարքութեան օրով, 1645'ին հանդիպած Գումքափուի մեծ հրդեհը, որուն մէջ Մայր Եկեղեցին և յարակից պատրիարքարանն ալ այրեցան, և միւս տարին 1646'ին վերաշինուեցան Պօղոս Տիվրիկցի վարդապետին գլխաւորութեամբ (ՉԱՄ. Գ. 624), որ Կալանոսի հեռանալէն ետքը Դաւիթի հետ հաշտուած պիտի ըլլայ (§ 1696)։ Սոսկալի երկրաշարժ մըն ալ 1648'ին Վանն ու Վասպուրականը աւերեց, քաղաքներ ու գիւղեր ու վանքեր քարուքանդ ընելով, որոց նորոգութեան երախտաւոր եղաւ Ոսկեհիջան Վանեցին։ Երկրաշարժին օրը Դավրիժեցին կը դնէ յապրիլ ամսոյ յերկուսն, յաւուր ուրբաթու գիշերն, որ լուսանայր աւուր շաբաթու առաւօտն (ԴԱՎ. 378), սակայն 1648'ին ապրիլ 2'ին զատիկ է, և աւագ ուրբաթ մարտ 31'ին է, և միայն 1659'ին լոյս աւագ շաբաթը ապրիլ 2'ին կ'իյնայ. ուստի պէտք է աւելի ամսաթիւի քան թէ տարեթիւի, շփոթութիւն մը ընդունիլ Դավրիժեցիի տուած թուականին մէջ։

**ՏԵՂԱԿԱԼՆԵՐՈՒ ԺԱՄԱՆԱԿԸ**

**1699**. Տեղակալութեան ձեւը, կամ աւելի ճիշդ խօսելու համար՝ պատրիարքաբանի անգլուխ կերպարանը, տարիի մօտ տեւեց 1649'էն սկսելով մինչեւ որ Դաւիթ պահ մը տեղակալները հաճեցուց, որ նորէն զինքը պատրիարք ընդունին, և ընդունեցան 1650'ին, բայց չորս ամիսէն նորէն վար առին, և տեղակալութեան ձեւով կառավարուեցան միջոց մըն ալ։ Դաւիթի այդ վերջին պաշտօնանկութիւնը տեղի ունեցաւ 1651'ին, և կ'երեւի թէ ինքն ալ յուսահատեցաւ այլեւս կացութեան տիրանալ և նորէն պատրիարքութեան բարձրանալ, զի 1651 դեկտեմբեր 10'ին նա Բերիա կը գտնուի, Դաւիթ Եւդոկիացի քահանային պատմածին համեմատ (ՏԱՇ. 841)։ Երբոր նախապէս ծանօթ դէմքեր Կ-Պոլսոյ մէջ կը պակսէին, նոր մը կը սկսէր այնտեղ երեւան գալ, Եղիազար Այնթապցին։ Նա 1641'ին վարդապետութեան աստիճան առած Յովհաննէս Զնքուշցի վարդապետէն, անկէ ետքը զանազան քաղաքներ պտտած, 1647'ին Արղնիի առաջնորդ եղած, և Փիլիպպոսէ եպիսկոպոս ձեռնադրուած, Բարձրաքահայեաց Ս. Աստուածածին վանքին պայծառութեան աշխատած (ԹՈՐ. Բ. 400), անկէ Երուսաղէմ գացած էր, ուր կը յաջողի 1649'ին Աստուածատուր պատրիարքը գահընկէց ընելով անոր տեղ ընտրուիլ։ Բայց տարին չբոլորած Աստուածատուր իւր աթոռը կը դառնայ (§ 1687), և Եղիազար 1651'ին Կոստանդնուպոլիս կու գայ (ԹՈՐ. Բ.400), թերեւս Երուսաղէմի աթոռը նորէն ձեռք ձգելու համար, բայց Կոստանդնուպոլսոյ անգլխութիւնը զինքը աւելի կը շահագրգռէ, և Կ-Պոլսոյ ժողովուրդն ու իշխանաւորները մշակելու կ'աշխատի։ Այդ միջոցին տեղակալութիւն կը տիրէր Կ-Պոլսոյ մէջ, այնպէս որ 1651'ին Փիլիպպոսի ուղեւորութեան համար կայսերական հրովարտակ ստացած ըլլալու գործն ալ կը վերագրուի Հայկական ժողովրդոցն որք բնակեալ են ի Կոստանդնուպօլիս (ԴԱՎ. 263), և պատրիարք չյիշուիր, զի իրօք այն միջոցին պատրիարք չկար։ Եղիազար բուռն բայց գործունեայ, յախուռն բայց գրաւիչ բնաւորութեան տէր, քիչ քիչ կը շահի տեղակալները, որք կը հրապուրուին նոր եկող ճարտար և յաջողակ վարդապետէն, և 1651'ին վերջերը զինքն պատրիարք կ'անուանեն։ Սակայն Եղիազար ինքզինքը գործի վրայ փայլեցնելու և ազգին վիճակը դարմանելու չափ ատեն չունենար, քանի որ պարտաւոր էր նախապէս իւր դիրքը ամրացնել, և ահա 1652 զատիկէն ետքը Փիլիպպոս կաթողիկոս Երուսաղէմէ կը հասնի (§ 1691)։

**1700**. Փիլիպպոսի Կ-Պոլսոյ մէջ ըներլիքը գծուած, և իւր միտքին մէջ ալ կանուխէն կազմուած էր, զի անցուդարձին կա-

տարեկապէս տեղեակ էր։ Նախ սկսաւ իւր հեղինակաւոր ձայնով, ազդու քարոզութեամբ և ազդեցիկ խրատներով ամէնուն սիրտն ու համակրութիւնը գրաւել, ժողովուրդին մէջ

**ՓԻԼԻՊՊՈՍ Ի Կ-ՊՈԼԻՍ**

ինկած ալեւալի գժտութիւնները հետզհետէ թեթեւցնել։ Ընդհանուր գործերուն և շահերուն պէտքը զգացնել, այնպէս որ կիրքեր հետզհետէ թուլցան, թշնամութիւններ քիչցան, և հնար եղաւ քիչ ու շատ համաձայնութիւն մը հաստատել։ Այդ նպատակին համար անհրաժեշտ պայմաններէն մէկն էր, անկողմնակալ և ամէնուն հաճելի պատրիարք մը ունենալ, մինչ Եղիազար Այնթապցին, իմանց ազդեցութեամբ բարձրացած ըլլալուն, միացեալներուն հաճելի չէր։ Եղիազար ինքն ալ զգաց այդ պէտքը, թէ պիտի չկարենայ պէտք եղած յարաբերութիւնները հաստատել, հարկաւ Փիլիպպոսի հայրական խրատներն ալ ազդեցին, և Եղիազար պատրիարքութենէ հրաժարեցաւ նոյն 1652'ին վերջերը, տարի ու կէս պատրիարքութիւնը վարելէն ետքը (ԹՈՐ. Բ. 403), և 1653ին նորէն քաշուեցաւ իւր առաջին տեղը, այն է Արդնիի վիճակը և Բարձրահայեաց վանքը (ԹՈՐ. Բ. 404)։ Իսկ պատրիարք ընտրուեցաւ Յովհաննէս Մուղնեցի եպիսկոպոսը, որ պէտք է Փիլիպպոսի հետեւորդներէն մին եղած ըլլայ, վասնզի նախապէս ոչ գործի վրայ գտնուած է և ոչ անունը յիշուած է։ Երկրորդ գործն էր ազգին վրայ ծանրացող 40,000 ղուրուշի պարտքը սրբել, որ քար գայթակղութեան եղած էր։ Փիլիպպոսի հովանաւորութեամբ հանգանակութիւն մը բացուեցաւ, և նա ինքն կոյոյյ հօֆաճար-յասի՝ տըւ հաատաըէմ, որոնք ճաղւամ ջանէ- և ալխտարութեամբ գործին հետեւեցան, և յոխսա ոտի, մէկ կողմէն հաւաքեցին և միւս կողմէն վճարեցին, և պարտքերը սրբեցին։ Գործին յաջողութեան օգնեց Փիլիպպոսի ազդեցութիւնը, որովհետեւ ատ ոչ ըլնէր հրաման հայրապետին, ոչ բնաւ էլէր բան ինչ առել (ԴԱՎ. 257)։ Պետութեան առջեւ ալ յարգ ունեցաւ Փիլիպպոս, և կայսերական հրովարտակ ալ ստացաւ, որով իւր կաթողիկոսական իրաւասութիւնը կը ճանչցուէր

Թուրքիոյ Հայերուն վրայ (ՋԱՔ. Բ. 74)։ Կ-Պոլիս եղած ատեն Փիլիպպոս առիթ գտաւ Պրուսա ալ այցելել Երեմիա Քէօմիւրճեանի ընկերակցութեամբ, և Սիվրի Աստայի մէջ ալ պատարագեց, Ներսէս Մեծի աքսորին աւանդական յիշատակին համեմատ (09 ՕՐԱ. 98)։ Այսպէս ամբողջ տարի մը Կ-Պոլսոյ մէջ աշխատեցաւ ազգային գործերու կարգադրութեան համար, ոչ միայն տեղական խնդիրները լուծելով, այլեւ հեռաւոր Լեհահայերուն խաղաղութեան ալ նպաստելով։

**1701.** Նորէն պէտք է Լեհահայոց դառնանք և անոնց ընթացքը բացատրենք, զորս թողուցինք 1640'ին, երբ

**ԼԵՀԱՀԱՅԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԸ**

Փիլիպպոս անոնց առաջարկած էր խոհեմ և հմուտ անձեր յղել իրեն, որպէսզի պէտք եղածը իմանայ և կատարէ (§ 1678)։ Կ'երեւի թէ առաջարկը չգործադրուեցաւ, կամ եթէ գործադրուեցաւ՝ արդիւնք չունեցաւ, վասնզի հետք մը մնացած չէ պատմութեան մէջ։ Նիկոլ միշտ մնացած է իւր բռնակալ իշխանութեան վրայ և իւր յամառ հակառակութեան մէջ, իսկ ժողովուրդը իբր 12 տարի եւս չարունակած է իւր ընդդիմութիւնը, և ամէն միջոցներ գործածելէ և ապարդիւն ելնելէ ետքը, վերջապէս յուսահատութեան մատնուած, որոշած է անուղիղ միջոցներու դիմել առանց իւր միտքէն հրաժարելու։ Ժողովուրդին գլխաւորները կը մտածեն, զի գտնէ ի վերէն երեսս կոչոմէն ղոնչէն, ընծայեցուցեն, որպէսզի այս կերպով կարենան յաղթահարել զարհեպիսկոպոսն Նիկոլ, և եկեղեցին յիշխանութիւն իւրեանց մացնել, և անկէ ետքը կարգեցին զամենայն բաթ առաջնորդ կարգել։ Այդ խորհուրդը յաջողցնելու համար իբր թէ Օձնեցիէն առաջ գրուած ձեռնադրութեան մաշտոցի մը մէջ՝ դաւանութեան ձեւ մը կը գտնեն, որուն մէջ կը պարունակուի եղեր երրորդ Նոհանի ընթելոյ որբոյն Պետրոսի, Գրիգորի Լուսաւորչին, և ամենայն սրբոցն ժառանգութեան Նոցա, այլև ընդունելի էին եօթնեկեան ժողովին և ամենայն յետնոյն (ԲՈՒՆ. 26)։ Մեզի համար անիմանալի կը մնայ այս տեսակ հանգանակ մը Օձնեցիէն առաջ գրուած, երբ Հռոմի հետ յա-

*բարերութիւններ ալ գոյութիւն չունէին, ուստի յայտնապէս հնարիմաց դարձուածի մը, կամ թէ կեղծեալ գրուածի մը արդիւնք եղած է այդ տարօրինակ գիւտը, որուն իսկութիւնը գրուած չէ, և ենթադրութեանց մէջ մտնելն ալ աւելորդ կը դատենք։ Լեհայերը այդ հանգամանքը ներկայեցին թագաւորին, որ էր հռչակաւորն Յովհաննէս Քազիմիր, Եանքէօժէմէ գրուած մերիններէն (ԴԱՎ. 300), որ առաջարկը ընդունելու համար Հայոց կաթողիկոսական հաստատութիւնը պահանջեց։ Փիլիպպոսի Կ-Պոլիս հասնիլը բարեպատեհ նկատուելով, իսկոյն պատուիրակներ յղուեցան կաթողիկոսական վաւերացումը ձեռք ձգելու, և միանգամայն իրենց բուն միտքը բացատրելու համար։ Փիլիպպոս իսկոյն չհաւանիր առաջարկին, վասնզի իսկութիւնը իրեն յայտնի եղած պիտի ըլլար, բայց զինչ ճառեմ խորհրդածութեանց, և երկուցեալ փոյթ դարձցէ ժողովուրդն քաղաքին ի ծոց հռովմէական եկեղեցւոյ (ԲՌՆ. 159), և վստահանալով թէ ասիկայ միջոց մըն է փրկութեան եկեղեցեաց նոցա (ԴԱՎ. 299), և լսելով իսկ անշուշտ թէ ինչ է Լեհահայոց ներքին դիտումը, ուր ուրեմն հաճի կաթողիկոսն յայն կոյս, և հանգանակի ձեռք կը հաստատէ (ԲՌՆ. 159)։ Բայց գիրը Լեհահայերուն չյանձներ, այլ կուտայ զայն իւր աշակերտներէն Յովհաննէս Արղնեցի վարդապետին ձեռքը, այր փորձեալ իմաստութեամբ և հանճարեղ բանիւ, և զայն 1653 նոյեմբեր 5'ին գրուած կոնդակով նուիրակ կը կարգէ (ԿԱՄ. 521), և կը հրահանգէ նախապէս ամէն միջոց գործածել (ԴԱՎ. 299), և մի՛ տայցէ տանել զայն թուղթ, բայց միայն ի ծայրագոյն հարկէ, (ԲՌՆ. 159)։ Այս ամէնը կը կատարուէր առանց Նիկոլի մասնակցութեան, բայց հնար չէր որ Նիկոլ լուր չառնէր ժողովուրդին ձեռնարկին նկատմամբ։*

**ՆԻԿՈԼ Ի Կ-ՊՈԼԻՍ**

**1702.** *Նիկոլ կը մտածէ որ պատուիրակներ կրնան կաթողիկոսին հետ իրեն աննպաստ որոշման յանգիլ, որովհետեւ համէական կանութենէ պատ իւր անձնական անկարգ ընթացքին դէմ ալ գանգատներ ունէին, և կասկածելով թէ մերձ է ինքն ի կործանման, եթէ միայն կրկնեսցէ ժողովուրդն զայն հարուած, այսինքն իւր անկարգութեան դէմ ամբաստանութիւններ ընէ, կ'որոշէ ինքն ալ անձամբ կաթողիկոսին երթալ (ԲՌՆ. 159)։ Պէտք եղած ծախքին համար զերկու հազար ղուրուշ նախադրամ կը ստանայ Եւդոկիացի Մարկոսի որդի Սիմոն Չելեպի մեծահարուստ բարեկամէն (ԴԱՎ. 297) և հագօք սուրհանդակաց շտապով ճամբայ կ'ելլայ (ԲՌՆ. 26), Պուղտանի վրայէն (ԴԱՎ. 297)։ Ճամբան կը հանդիպի Յովհաննէս Արղնեցիին՝ որ պատուիրակներուն հետ Իլվով կ'երթար, և անկէ ալ կ'առնէ թուղթ մը կաթողիկոսէն վասն ինքեան յանձնարարութեան, և ճամբան շարունակելով կը հասնի Կ-Պոլիս, և Փիլիպպոսին կը ներկայանայ (ԴԱՎ. 299)։ Իսկ Արղնեցին կ'երթայ Իլվով։ Լեհահայեր Նիկոլը մինակ չթողլու համար, որ ուզածը չխօսի կաթողիկոսին և չհամոզէ, նոր և ազդեցիկ պատգամաւոր մըն ալ ճամբայ կը հանեն, Խաչքօ կամ Խաչիկ անուն այր երևելի, որ էր մի ի դպրաւորացն Հայոց։ Խաչքօ ալ Նիկոլի ետեւէն Կ-Պոլիս կը հասնի։ Փիլիպպոս որ յակամայից հաստատած էր Լեհահայերուն մտածած կերպը և առաջարկած գիրը, կացութիւնը փոխուած կը տեսնէ Նիկոլի հասնելովը, վասնզի այլեւս իւր ձեռքին տակն էր քար գայթակղութեան եղող անձը։ Նիկոլ շուտով կը հասկընայ այդ բանը, և պարագայից յարմարելու ճարտարութեամբը, միտք ու լեզու կը փոխէ, և ինչպէս լատին պատմիչը կը գրէ. ողջունէր և հայցէր թողութիւն կաթողիկոսէն, ներել նմա զամենայն յանցանս իւր. և տայր գրով երդմամբ ուխտէ, թէ յայսմհետէ հնազանդ լիցի աթոռոյն էջմիածնի։ Յանձն առնոյր և այլ պայմանս, զորս անդատեհս կը կոչէ Լատին պատմիչը (ԲՌՆ. 159), վասնզի Հայ եկեղեցւոյ նպաստաւոր էին։ Այդ պայմանները կը գտնենք Դաւրիժեցիէն յիշուած, և են. 1. Նիկոլ իւր եկեղեցական ու աշխարհական հետեւորդներուն հետ՝ դառնալով խոստովանեսցէ զուղղափառութիւն Լուսաւորչին և սրբոյն աթոռոյն հայրապետութեան։ 2. Նիկոլ իւր հետեւորդներով՝ ուրասցէ զուղղափառութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ։ 3. Նիկոլին յաջորդը Էջմիածնի կաթողիկոսէն լինիցի օծեալ, և անոր հնազանդ և հպատակ լիցի։ 4. Նիկոլ իւր հետեւորդներով, մի՛*

խառնեսցէ ջուր ի բաժակ սրբոյ պատարագին: 5. Պապին անունը չյիշուի յեկեղեցական ժառանգաւորաց և ի կղերիկոսաց, ոչ ալ Նիկոլի յաջորդէն, այլ միայն Նիկոլէն, և զայն եւս ի պատարագն միայն: Այս բացառութիւնն ալ ներուեցաւ, որովհետև Նիկոլ այդ յիշատակութիւնը յետնագրեան խոստացած ըլլալով, կասկած կը յարուցանէր թէ գուցէ մահապարտ անձիցն զինքն: Նիկոլ այդ ամէնը հաւատով սրտի և յօժար կամօք յանձին կալեալ բոլորն ալ կնքով կնքեալ և յետնագրով դրոշմեալ եւ կնքա-գրոյն, և կաթողիկոսն ալ գիրը յանձնեց Խաչքօ դատաւորին, որպէսզի Իլվովի դիւանին մէջ ի պահեստ անձիցն վասն ապագայն զգուշութեան: Փիլիպպոս յատկապէս ալ խրատեց Նիկոլը որ զգուշասցի ի բաժանա-կան և ի խենէշ վարուց իւրոց, ուղղութեան դայ, և եպիսկոպոսութիւն վարէ Քրիստոսավայել կենցաղավարութիւն ունենալով, Նիկոլ ինչ որ առաջարկուեցաւ կատարելապէս անդիմադարձ ընդունեցաւ, կաթողիկոսն ալ զինքն արձակեց ի կապանաց բանադրանաց (ԴԱՎ. 298), զոր Մովսէս կաթողիկոս դրած էր (§1660), Իլվովի եպիսկոպոսութեան նոր կոնդակ ալ տուաւ 1654 ապրիլ 15 թուականով (ԿԱՄ. 255), և այնպէս արձակեց իր տեղը:

**1703.** Յովհաննէս Արղնեցին կանուխէն Իլվով հասնելով սկսած էր խաղաղութեան ու հաշտութեան ու սիրոյ քարոզներ խօսիլ, բայց ժողովրդեան ընդդիմանան, և Նիկոլը հեռացած ըլլալուն այլեւս ու կամին ընդունել նմա, մինչ Արղնեցին՝ Նիկոլին կաթողիկոսին երթալը բարեգուշակ նկատելով՝ կ'աշխատէր փոխադարձ հաշտութիւն պատրաստել առանց գործը վճռական ձևի մտցնելու, մինչև որ Նիկոլ դարձաւ կաթողիկոսին օրհնութեան կոնդակով և Հայ եկեղեցւոյ հպատակութեան յանձնառութեամբ: Այն ատեն աւելի դիւրացաւ գործը: Նիկոլի զղջումը, հայադաւանութեան և Հայոց եկեղեցիին վերադարձի յայտարարութիւնը ժողովուրդին միտքը շինեցին, իբր թէ Նիկոլ զղջացեալ և թողեալ իցէ զչար վարս իւր: Քաղաքական իշխանութիւնն ալ, կանուխէն ընդունած ըլլալով Հայերուն կրօնքի ազատութիւնը,

ԼԵՀԱՀԱՅԵՐՈՒ ՀԱՇՏՈՒԹԻՒՆԸ

նոր ընդդիմութիւն չէր կրնար յարուցանել, երբոր եպիսկոպոս և ժողովուրդ կը համաձայնէին, որով հաշտութիւնը անհակառակ կնքուեցաւ: Առաջին կիրակէին Յովհաննէս Արղնեցին գլուխ կանգնեցաւ, ու եպիսկոպոսն ու ժողովուրդը միասին եմուտ յեկեղեցին իւրեանց (ԴԱՎ. 299), ուստից 1630'էն, այսինքն 23 տարիէ ի վեր վտարուած էր ժողովուրդը (§ 1661), խրատեց, քարոզեց, մխիթարեց, ածեալ ի համբոյր հաշտութեան զամենեսեան ընդ եպիսկոպոսին, որով ամէնքը մխիթարեալ ուրախացան, և փառաբանեցին օրհնեալ զԱստուած ամենայնի: Յովհաննէս Քազիմիր թագաւորն ալ, որ այն օրեր Իլվով եկաւ, յատկապէս իրեն մօտ հրաւիրեց Արղնեցին, խօսեցաւ ու խորհրդակցեցաւ, և շնորհակալութեան արար նմա, ժողովուրդն ու եպիսկոպոսը վերջապէս հաշտեցնել կրնալուն, և զբազմաժամանակեայ խռովութիւնն բառնալուն համար (ԴԱՎ. 300): Այս հաշտութեան օրը նուիրական եղաւ Լեհահայերուն համար, և տարուէ տարի անոր յիշատակը որոշեցին կատարել Տօն Միութեան անունով, և օր սահմանեցին Հոգեգալուստէն ետքը մետասաներորդ կիրակէն (ԲՈՒՆ. 27), որ 1652'ին կ'իյնար օգոստոս 8'ին, Վերափոխման բարեկենդանին, և այն օրը պէտք է ընդունիլ իբրև Լեհահայերու հաշտութեան օրը: Միութեան տօնին վրայ խօսելով Լատին պատմիչը, կ'ըսէ թէ ուրախ միաբանեցան նոքա ընդ միմեանս, այլ ոչ ընդ սուրբ եկեղեցւոյն, իմա՝ եկեղեցւոյն Հռոմայ, իբր զի ջերմեռանդութեամբ պաշտէին զհերետիկոսական արարողութիւնս իւրեանց, և թէ Նիկոլ զամենայն ինչ կարգեաց ըստ այնմ որպէս էր յառաջ քան զխոստովանութիւնն իւր, այսինքն հռոմէադաւանութենէն առաջ (ԲՈՒՆ. 27): Եւս և ստորագրութիւն թղթոյն դատաւորութեան, զոր իբր թէ հին մաշտոցէ քաղած էին Հայերը (§ 1701), յանձնառու համարեալ, հրամայեալ մինչ ջնջել զայն էր (ԲՈՒՆ. 159): Աւելորդ չըլլայ դիտել տալ թէ որչափ ամուր էր Փիլիպպոս հայադաւան սկզբունքներու վրայ, որով չէր կրնար այլապէս վարուած ըլլալ Հռոմի ուղղած գիրերուն մէջ (§ 1680), յայտնի կէտերը կըրկնելով և մնացածը զգուշաւորութեամբ լռելով: Յիշեալ եղելութեանց հետևանքով Հայք կարէ զստորագրութիւնն ի ձեռաց իւրեանց, զի

քոյին Հռոմ՝ մնացեալը զանձինս ընծայեցուցանե-լոյ, և այնու գտեալ զուրախութեանն, ծառայել կալով է Նոյնի Հռոմայ իւրեանց (ԲՌՆ. 27)։ Ասիկայ մեծ ցաւ կը պատճառէ Լատին պատմիչին, մանաւանդ տեսնելով թէ քաղաքական իշխանութենէ ալ հաւանութիւն ստացան, և օրհնութեամբ մեծամեծ քոյին յորդորէն Յովհաննէ Թովմէրայ (ԲՌՆ. 160)։ Նոր կացութիւն մը ստեղծուեցաւ այս կերպով Լեհահայոց մէջ, որոնք արտաքնապէս իբր թէ հռոմէադաւանութեան յարած կ'երեւէին, մինչեւ իսկ Լատին եկեղեցիներու մէջ պատարագած ատեննին յաւելուին ջուր է գինի բաժակին (ԲՌՆ. 27), այլ ներքնապէս, այսինքն իրենց եկեղեցիներուն մէջ, ըստ ամենայնի Հայ եկեղեցւոյ կանոններ կը պահէին, ուրուն չէր խղճեր առաջնորդ լինել Նիկոլ, որ միշտ իւր անձին ու շահին կը ծառայէր, և ոչ երբեք կրօնքի կամ դաւանութեան, հակառակ հռոմէականներուն իր վրայ տածած մեծ համակրանքին։ Դավրիժեցին 1660 մայիս 10'ին գրելով կը հաստատէ, թէ մինչեւ այն օր Իլվովցիք և Նիկոլ կան է մերայ նոյն դայմանադրութեան (ԴԱՎ. 302)։ Նոյնպէս լատին պատմիչն Ալոզիոս Փիթու, 1668 դեկտեմբեր 31'ին (ԲՌՆ. 113) կը վկայէ, թէ Հայեր նոյն գիրքը կը պահեն ու ձայնեն մի-ջին ցայսօր (ԲՌՆ. 27)։ Իսկ Յովհաննէս Արղնեցի ամ մի ողջոյն Իլվով մնաց, որպէսզի Հայ եկեղեցւոյ կանոններուն և ծէսերուն գործադրութիւնը ապահովէ, և այս դարձաւ և եկ է սուրբ Էջմիածին 1654'ին (ԴԱՎ. 300), և իւր պաշտօնին յաջողութիւնը հաղորդեց կաթողիկոսին, որ իւր աթոռը դարձած էր։

**1704.** Փիլիպպոսի բացակայութեան էջմիածնի մէջ կատարուած գործերուն նշանաւորները Ս. Գայիանէի

**ՎԿԱՅԱՐԱՆՆԵՐՈՒ ՆՈՐՈԳՈՒԹԻՒՆԸ**

և Ս. Հռիփսիմէի վկայարաններուն նորոգութիւններն են։ Առաջ Ս. Գայիանէի տաճարին նորոգութեան ձեռն է եդեալ Փիլիպպոս 1651'ին, դեռ Էջմիածինէ չմեկնած (§ 1686)։ Տաճարին պատերն թո-վանդակ էջեալ էր, միայն շրջանակի պատերը և մէջտեղի չորս սիւները կանգուն էին, այնպէս որ գլուխը բոլորովին բաց էր, յատակը ծածկեալ և խրամատեալ (ԴԱՎ. 250), աւագ խորանը և ներքեւի մատուռը, որ է դէր հանգուցեալ նշխարաց սրբոց, աւերեալ և քանդեալ էր, և ողջակէզ և գանձօք լցեալ (ԴԱՎ. 251)։ Հարկաւ այդ վերջին պարագաները Մովսէսէ առաջ ժամանակին համար են, զի չենք կարծեր որ 20 տարիներէ իվեր, որ նորոգութեանց ձեռնարկուած էր, աղբիւսով լեցուն թողուած ըլլար Գայիանէի տաճարը։ Նորոգութիւնները կատարուեցան է հիմանց մինչև ցկատարն գմբեթին։ Ս. Գայիանէի տաճարին նորոգութեան գործը աւարտելէն ետքը կը ձեռնարկեն Ս. Հռիփսիմէի վկայարանին ալ նորոգութեանց, որուն մէջ՝ սանիքը, կաթողիկէին գագաթը, պատերուն երեսները, ներքին յատակը, բեմը և խորանները՝ աւերեալ և քայքայեալ էին։

**1705.** Իբրեւ հետաքրքրական և միանգամայն կարեւոր մի միջադէպ, յառաջ բերենք աւանդական պատմութիւն մը զոր Դավրիժեցին ալ արժան սեպած է տեղնիտեղօք պատմել։

**ԳԱՅԻԱՆԷԻ ՆՇԽԱՐՔԸ**

Երբոր 1652'ին Ս. Գայիանէի վկայարանը կը նորոգուէր, գործին վրայ վերակացու և գործավար դրուած էր Յովհաննէս աբեղայ մը, այր ուղղափառ և գործունեայ և խոհըր-դական խորհրդով։ Սա հոգեւորական հետաքրքրութիւն մը կը զգայ վկայարանին ներքեւ վկայուհիներուն գերեզմանները գտնել, և յարմար կերպով մը յայլոց առաքեալ զմննեան գործով, ինքն միայնակ պեղումներու կը ձեռնարկէ, և գիշեր և ցերեկ մի չարունակ աշխատելով կը բախտաւորուի երեք գերեզմաններու հանդիպիլ, զորս կը բանայ ալ, և աչքովը կը տեսնէ ոսկորները ողջակոյտ, փայլուն և անդամոյ, և հոտ անուշութեան ալ կ'առնէ։ Ոսկորներէն միայն կտոր մը կը վերցնէ, տապանները կը փակէ ինչպէս էին, խճով և կրով կ'ամրացնէ, և հողը նորէն լեցնելով, առջի վիճակին կը բերէ, և անկէ ետքը միայն եղելութիւնը միաբաններուն կը հաղորդէ, և ոսկրն ալ կը ցուցնէ որ է նշան հաստատութեան (ԴԱՎ. 211)։ Դավրիժեցին եղելութեան օրն ալ կը նշանակէ 1652 հոկտեմբեր 19, երեքշաբթի օր (ԴԱՎ. 252), որ տոմարական հաշուով ալ կ'արդարանայ։ Գիւտին ստուգութիւնը իբրու աբեղայի մը վկայութեան վրայ կը հիմնուի, սակայն անոր երկիւղած ուղղամտութիւնը

*պէտք է իբրև ճշմարտութեան երաշխաւորութիւն ընդունիլ։*

**1706**. *Ս. Հռիփսիմէի տաճարին մէջ ալ նշխարաց խուզարկութիւն կը կատարուի ; թերևս միևնոյն շինութեանց գործավար Յովհաննէս արեղայի ձեռքով, բայց միաբաններու ընկերակցութեամբ։ Այս անգամ երեսուն կ'ելլեն, երեք տող թաղին թուղին, երկուքը է մէջ կնքոյ, և երրորդը՝ որ և թագաւոր էր՝ է մէջ փայտեայ տփխէղ գրուած* (ԴԱՎ. 252)։ *Այդ գիրքը և փայտէ տնտուկը պէտք չէ զարմանալի երևուին, քանի որ պատմած ենք անգամ մը, այդ տապաններուն խառնուած և դուրս հանուած ոսկրներուն նորէն հաւաքուած և տեղը դրուած ըլլալը* 45 *տարի առաջ* (§ 1599), *Դավրիժեցին յառաջ կը բերէ Հռիփսիմեանց գերեզմանին քովը պատին վրայ գրուած երեք տուն չարականի մը պատճէնը, Յակոբ տեառնայ սարք կաթողիկէ որհնեցաւ նորոգատուրեն* (ԴԱՎ. 253) *ստորագրութեամբ։ Շարականը անարուեստ է, և վերջին տուններ նոյն տաճարին սպասաւորող քահանայի մը սիրտին զեղումը կ'երևի։ Երկու տաճարներուն նորոգութիւնները* 1651'*ին սկսած ըլլալով՝* 1653'*ին աւարտած են յամս երից* (ԴԱՎ. 253), *որ է ըսել թէ Փիլիպպոս չմեկնած սկսած է, և դառնալէն ետքը լրացուցած, իսկ բացակայութեան միջոցին գործին չարունակութիւնը հոգացած է Յակոբ Ջուղայեցին, ինչպէս հաւանական ցուցուցինք* (§ 1686)։

**1707**. *Փիլիպպոսի Կ-Պոլիս մնալը տևեց տարի մը ամբողջ* 1652 *ամառուան սկիզբէն մինչև* 1653 *նոյն*

ՓԻԼԻՊՊՈՍԻ ԴԱՌՆԱԼԸ

*ամիսները։ Երկու մեծ գործերէն զատ, որք են Կ-Պոլսոյ և Իլվովի խռովութիւններուն բարձումը, նա կատարեց այլևս բազում գործս բարութեանց և օգտութեան, և եկեղեցականաց և աշխարհականաց համար կարգադրութիւններ հաստատեաց։ Մայրտաճարի դատարկուած գանձատան համար ալ երեւելի եկեղեցական անօթներ և սպասներ հաւաքեց, կաթողիկոսարանն ալ մարմնաւոր կարօտէն ճոխացնելու հոգ տարաւ* (ԴԱՎ. 260)։ *Այդ նիւթական նպաստներուն կարգին ամէնէն նշանաւորը եղաւ Մայրտաճարին գանգակատուն մը աւելցնելու համար պէտք եղած ծախքին հայթայթումը, զոր կաթողիկոսին առաջարկութեան վրայ մեծաւ յօժարութեամբ և կամակոր խնդրանօք յանձնառու եղաւ վճարել՝ Անտոն Չէլէպի անուն կոչէ ընտրեալ և ժողովեալ, յորժ երեւելի և հաւանեալ՝ Պրուսացի վաճառական մը, որ Կոստանդնուպոլսոյ և Զմիւռնիոյ մէջ վաճառատուններ ունէր, և ներքին գաւառներէն և Եւրոպայէ եկող ապրանքները մեծաքանակ գնէր, և մեծաքանակ վաճառէր զգինն, և երեք քաղաքներու մէջ ալ տներ շինեաց և կալուածս հաստատեաց* (ԴԱՎ. 261)։ *Դժբախտաբար Դավրիժեցին մակդիր անուն մը չյիշեր այդ նշանաւոր Անտոնին վրայ, որ գիտնայինք թէ որ ազգատոհմին նախնիքներէն եղած է Էջմիածինի զանգակատունին բարերարը։ Բայց ամէն առթի մէջ հնար չէ զայն նոյնացնել Անտոն Կեսարացի հետ՝ որ փոխեալ յերկիր Լէհաստան, թէպէտ սա ալ ունէր փառաւոր տուն, որ եղեւ ընդ Տիւլեւենկի դեսպանին։ Վասն զի այս Անտոն կը նկարագրուի իբրև մէկ մը, որ Հայոց ուխտն մեծ ընտրեալ, յիշեալ սորա մեծ նշան* (ՉԷՒ. 77)։ *Փիլիպպոս յաջողութեամբ փակելով իւր Երուսաղէմի և Կոստանդնուպոլսոյ երկամեայ հայրապետական ուղևորութիւնը ; ճանապարհ եղաւ դառնալ Մայրաթոռ, չենք գիտեր ինչ ճամբով, և է տօն Փոխման սրբոյ Աստուածածնի կատուին, այսինքն է* 1653 *օգոստոս* 14'*ին, եկաւ յէջմիածին* (ԴԱՎ. 260)։ *Հարկաւ առաջին հոգերէն մին եղաւ իւր բացակայութեան ժամանակ կատարուած գործերուն տեղեկանալ, որոնք կանոնաւոր ընթացք ունեցած էին Յակոբ Ջուղայեցիի հսկողութեամբ, և վերջին պէտքերը լրացնել երկու վկայարաններուն և Մայրաթոռին մէջ կատարուած նորոգութեանց։ Զմեռը վերահաս ըլլալուն նոր շինութեան չկրցաւ սկսիլ, և ցուրտերուն մեղմանալուն ձեռնարկեց զանգակատունին հիմնարկութեան, որուն համար տեղւոյն բազմաց յուսալով կայր է սեղանոյ որդի կաթողիկէին* (ԴԱՎ. 260)։ *Սկզբնաւորութիւնը Դավրիժեցին կը դնէ յառաջ ազատագոյն* (ԴԱՎ. 262), 1654'*ին Բուն բարեկենդանը կ'իյնար փետրուար* 5'*ին։ Փիլիպպոս կ'աշխատէր օր առաջ գործը վեր-*

ջացնել և սիրտին փափաքը լրացնել, սակայն սաստիկ ընդդիմութեան հանդիպեցաւ Մահմատղուլի կուսակալին կողմէն, այր քսու և բանսարկու, այլև կաշառէ ընդ դրէպանէից։ Որուն թէպէտ կաշառօք և բազում խնդրանօք մօտեցաւ կաթողիկոսը, բայց նա ոչ լուաւ նմա, և շարունակ կը սպառնար թէ ոչ թողում շէն զշինուածն, այլ քակեցից եմ զնա, զի Փիլիպպոս արդէն ձեռնարկած էր հիմերը դնել, և քիչ քիչ առաջ կը տանէր, և տարին մը այնչափ բարձրացաւ շէնքն, մինչև կապեցան ներքին կամարքն, երբ Փիլիպպոսի ալ մահը վրայ հասաւ։ Զանգակատունը, ինչպէս այսօր ալ կը տեսնուի, հիմնարկուեցաւ Մայրատաճարին արևմտակողմը, աւագ դրան առջև, հողոյ և կէս որմոյ ներքն (ԴԱՎ. 262)։

**1708.** Փիլիպպոս իր ուղևորութենէն դառնալէն ետքը տարիուկէս միայն ապրեցաւ Էջմիածնի մէջ, և տակաւ ակարացաւ իր առողջութիւնը, թէպէտև 63 տարեկան էր տակաւին (ԴԱՎ. 266)։ Տնանկի կիրակին, 1654 մարտ 18ին եկեղեցի իջաւ, Նստաւ յաթոռ և սկսաւ առնել քարոզ, մնաւորին ատակը իրեն նիւթ ընելով։ Բայց յաջորդ երկուշաբթին տկարացաւ և անկաւ ի մահիճս։ Բոլոր միաբանք չփութեցան, և լուր առնելու համար իրեն մօտեցողներուն սկսաւ ըսել, թէ ոչ ևս յառնեմ յանկողնոյս, և թէ երկրուան քարոզին մէջ, երբոր կը կրկնէր, ոչ ևս կարեմ լինել [illegible] խօսքերը, կարծես թէ յայտնի ասացէ [illegible], իբր թէ ինձի ըսէր, թէ ոչ ևս տեսանէք։ Իրօք ալ վիճակը օրէօր ծանրացաւ, և Դատաւորի կիրակին առաւօտուն, ընդ լոյս առաւօտուն սկսաւ հոգեվարել, ինքն ալ զգաց իր վիճակը, և սկսաւ Այժմ արձակես օրհնաբանութիւնը կրկնել, և այնպէս աւանդեաց զհոգին, 1655 մարտ 25ին (ԴԱՎ. 265)։ Դավրիժեցիին հանգամանօրէն նկարագիրը, զոր իբրև ականատես կը պատմէ, կը ցուցնէ թէ Փիլիպպոս մինչև վերջին շունչը ուշը վրան ունէր, որով ունկնդրին վիճակ ունեցած չէ, այլ ներքին սիրոյ մը հետևանք եղած է իր մահը, որ տարաժամ ալ կրնայ ըսուիլ, 63 տարեկան բոլորնկատի առնելով։

ՓԻԼԻՊՊՈՍԻ ՄԱՀԸ

Այս պարագայն աւելի կը բարձրացնէ Փիլիպպոսի արժանաւորութիւնը, որ բազմաշխատ կեանք և անխոնջ աշխատութիւն կրցած է ունենալ անտակիր տկարութեան մէջ։ Իր պաշտօնավարութիւնը բաւական երկար եղաւ 22 տարի և 3 ամիս (ԴԱՎ. 266), կամ աւելի ճիշդ 22 տարի, 2 ամիս և 12 օր, օծման օրէն հաշուելով։ Բայց աւելի ալ, զի Մովսէսի մահէն ետքն ալ ութ ամիս, իբր լոկ ընտրեալ կաթողիկոս տեղակալութեամբ կառավարեց Մայրաթոռը։ Փիլիպպոս կաթողիկոսներուն շարքին մէջ աւելի արդիւնաւորներէն մէկն է, վասնզի առաջ գործակից, և վերջէն շարունակող և գրեթէ լրացնող եղաւ, այն մեծ բարեկարգութեան և բարեզարդութեան, որուն առաջին գործիչն ու հեղինակն եղաւ Մովսէս Տաթևացին։ Փիլիպպոսի գործունէութիւնը տարածուեցաւ ամէն ճիւղերու վրայ։ Մայրաթոռին ներքին կարգերը, վանական կանոնները, եկեղեցական ծէսերը, բարոյական կենցաղը, իրմով ստացան իրենց հիմնական վերանորոգումը։ Երուսաղէմի աթոռին պայծառութիւնը, Կիլիկիոյ խնդիրին լուծումը, Կ-Պոլսոյ շփոթութեանց հանդարտութիւնը, Լեհահայոց կնճիռին վերցուիլը, իր վարչական արդիւնքներն եղան։ Մայրաթոռին, մերձաւոր վկայարաններուն, բազմաթիւ վանքերուն, և վիճակային եկեղեցիներուն շինութիւնները իրմով քաջալերուեցան ու լրացան։ Էջմիածինը իրմով զարդարեցաւ եկեղեցական անօթիւք, ոսկւով և արծաթով, մետաքսին զգեստուք և պատուական քարինք, նոյնպէս ալ հարստացաւ կահիւք պղնձեղինօք և բրդեղինօք, և բազմացան հօտք անբան կենդանեաց, ուղտք և ջորիք, և ջոկք մատակ ձիոց, և ջոկք խաշանց և անդեոց, այլ և արտք և այգիք և բուրաստանք, և ամէն տեսակ կալուածներ արդիւնաւորել տուաւ (ԴԱՎ. 263)։ Մեծ եղաւ նաև իր համբաւն ու ազդեցութիւնը, և եղած էր [illegible] և մեծարոյ առաջի ամենայն ազգաց, Հայոց, Հոռոմոց, Վրաց, Օսմանցւոց, Պարսից, և մեծամեծ իշխանաց, նաև թագաւորաց իսկ։ Մեծ քարոզիչ ալ եղաւ, և բոլոր կեանքին մէջ անխափան վարեց իր վարդապետական կոչումը, ի գեղս և ի քաղաքս, ի վանս և յանապատս, և յամենայն տեղիս, և

զոր ինչ տարօրինակ խնդրէր, ոչ ոք տայր, այսինքն ապարդիւն չէր մնար (ԴԱՎ. 264)։

**1709.** Փիլիպպոսի թաղումն ալ խնդրոյ նիւթ եղաւ, վասնզի Մայրաթոռոյ միաբանութիւնն ամբողջ կ'ուզէր

**ՓԻԼԻՊՊՈՍԻ ԹԱՂՈՒՄԸ**

թաղել զայն ի դրան սրբոյ Էջմիածնի, ի մէջ երկու շինեալ զանգակատանն, այլ Մահմատուլի խան իր հակառակութիւնը կաթողիկոսին մահուընէ ետքը շարունակելով, նորէ տապանեցաւ զորացա, և ոչ թողոյր թաղել ի մէջ զանգակատանն, որ առանց իր հաւանութեան շինուած էր, և որուն համար միշտ կը սպառնար թէ տապալելոց եմ ես։ Ամէն տեսակ միջոցներ գործածուեցան կուսակալին հաւանութիւնը ձեռք ձգելու համար, և այս պատճառով Փիլիպպոսի մարմինը անթաղ կը մնայր, և կայր դադարեալ ի մէջ տաճարին, զորօրինակ երեւէր որպէս կենդանի մարդ ի քուն, և բնաւ գէշ հոտ մը չարտադրելով։ Օրեր անցան, իսկ Մահմատուլի խանն ու կոչեցաւ ի Բերդ Թորոսի էրոց, և վերջապէս միաբանները յուսահատելով, մահուանէ վեց օր ետքը, մարտ 31, Մուտն ի վիրապ յիշատակին շաբաթ օրը, մեծահանդէս թափորով մարմինը փոխադրեցին Ս. Հռիփսիմէի տաճարը (ԴԱՎ. 265), և անդ ի մէջ տաճարին, ի հիւսիսային կողման խորանին հանգուցին զնա, և գերեզմանը բարեպաշտներու ուխտագնացութեան տեղի եղաւ, ինչպէս կը վկայէ Դաւրիժեցին (ԴԱՎ. 266)։

**1710.** Փիլիպպոսի ժամանակը ուսումնական զարթնումի միջոցին կը պատասխանէ, որուն Մովսէսի հետ ինքն ալ իր

**ԲԱՂԷՇԻ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԸ**

արժանիքն ու մասնակցութիւնն ունեցած է։ Թէպէտեւ իրմէ անկախաբար ալ գործեր կատարուած են, սակայն միշտ իրեն համար պատուաւոր առնչութիւն մը կը ճշմարտուի, զի հայրապետի մը հոգին և ընթացք, բարեդուշակ ներշնչում կ'ազդէ ամէն կողմ։ Մեր նախընթացաբար հաստատուած ոճին համեմատ, ընդհանուր գործունէութիւնը պատմելէն ետքը, ցրիւ գիտելիքներէն կարեւորագոյնները քաղելու կ'անցնինք։ Կանուխէն սկսած էր մեծ հռչակ ունենալ Բաղէշ քաղաքին յարակից Ամրտոլի կամ ուղիղ հնչմամբ Ամլորդւոյ վանքին դպրոցը։ Անոր սկզբնաւորութիւնը կը տարուի մինչև Գրիգոր Տաթեւացի, որուն աշակերտներէն Դանիէլ վարդապետ ծխնաւոր մականուանեալ, իբրև գլուխ կը նկատուի Ամլորդւոյ վարդապետական գաւազանին, և յաջորդներ կը յիշուին Յովհաննէս Համշէնցի, Գրիգոր Արճիշեցի մականուանեալ Զօրթան, Ներսէս Մառաղ, Ներսէս Բաղիշեցի, Ներսէս Ամկեցի, Յովհաննէս Ոստանցի՝ մականուանեալ Բրդուռ, Բարսեղ Գաւառցի, և Ներսէս Մոկացի մականուն Բեղլու, զոր առիթ ունեցանք յիշել Մեծ-Անապատին մասին խօսած ատեններս (§ 1620)։ Ցիշուածներուն մէջէն Ամլորդւոյ դպրոցին մեծ զարկ տուողը եղաւ Բարսեղ Գաւառցին, որ Սուրբ Գրոց ուսումնասիրութենէ զատ հետամուտ եղաւ իմաստասիրական և տրամաբանական ճիւղերը մշակել, և պատճառ եղեւ գտանելոյ արուեստին գրոց գիտութեան (ԴԱՎ. 303)։ Եւ որովհետև անխոնջ ինքնօգնութեամբ, և աղօթքի դիմելով յաջողեցաւ իր նպատակին մէջ, իրաւունք ունեցաւ Դաւրիժեցին ըսել, թէ աղբիւրն և մայրն ամենայն իմաստութեան, Հոգին սուրբ Աստուած, ետ նմա գիտութիւն և հանճար մտաց խելամուտ լինել բառին և ոճոյն և շարաց արտաքին գրեանց, ուստի սորայր աշակերտելոյ և ցուցանելոյ բնաւ (ԴԱՎ. 302)։ Բաղէշի դպրոցին աշակերտութիւնը Հայ վարդապետութեան նոր զարգացման սկզբնապատճառը կրնայ ըսուիլ, զի Յովհաննէս Համշենցիի և Գրիգոր Արճիշեցիի բազմաթիւ աշակերտներն են, որ ամէն կողմ սփռուեցան և նոր դպրոցներ բացին։ Դաւրիժեցին կրցաւ ըսել թէ Արեւելեանք ամէն ի Զօրթանէն ուսեցան (ԴԱՎ. 340)։ Բայց Զօրթանի կամ Գրիգոր Արճիշեցիի ուսումը տակաւին սահմանափակ էր, իսկ արտաքին ուսմանց նախահայրն պիտի ճանչցուի Բարսեղ Գաւառցին, զի անով մեր վանքերուն մէջ առձեռն ուսմանց դասագիրքեր դարձան Սահմանացն, Պորփիւրին, Ստորոգութեանց, Պերիերմենիային, և նմանօրինակ գիրքերը (ԴԱՎ. 306)։ Բարսեղ վախճանեցաւ 1615'ին, և գերեզմանը տակաւին կ'երեւի Ամլորդւոյ

վանքին մէջ՝ Բաղէշի քաղաքին մօտ (ԿՈՂ.5)։

**ԱՄԼՈՐԴԻՈՑ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ**

**1711**. Բարսեղի գլխաւոր աշակերտներն եղան Յովսէփ Ոզմեցի, Հայրապետ Մոկացի և Ներսէս Մոկացի, և այս երրորդն է որ յոյժ աշխարհեցաւ, և հմտութիւններ առաւելացոյց քան զԲարսեղ և քան զընկերս իւր (ԴԱՎ. 304), բայց Մեծ-Անապատին համբաւէն գրաւուած Բաղէշէ հեռացաւ։ Սակայն այս պատճառով Բաղէշի դպրոցը չխանգարեցաւ, այլ Բարսեղի միւս աշակերտները զայն շարունակեցին, և եթէ առաջնորդներու շարայարեալ անունները չունինք, Ներսէս Մոկացիէն ոչ շատ ետքը կը գտնենք Վարդան Բաղիշեցին, որ հռչակաւոր եղած է իր ուսումնական զարգացման համար։ Մոկացին Մեծ-Անապատի մէջ արտաքին ուսմանց դասախօսութիւնը շարունակեց, այլ այնտեղ չատեր աւելի հոգին լուսաւորելու միտքով յետոյ կոչին։ Մելքիսեդեկ Վժանեցին միայն ամէնէն անձնուէր աշակերտ, և Ներսէսի հետ Լիմ ալ գնաց. երբոր նա այնտեղ հաստատուեցաւ, և երկուքը ձեռք ձեռքի տուած աւելի եւս ընդարձակեցին արտաքին հմտութեանց շրջանակը։ Լիմի մէջ հինգ ամիս եղբարք մնացին Մելքիսեդեկի հետ, բայց վերջէն յետոյ կոչին յընթերցմանէ արտաքին գրոց, զի տաղտաքին ու եւին ընթացաւորեալ ի վերայ բանին (ԴԱՎ. 304)։ Իսկ Մելքիսեդեկ միայն տոկուն աշխատող մինչեւ վերջը, և գերազանցեց Բարսեղի և Ներսէսի հմտութիւնները, և իւր գիտութիւնը փոխադրեց Էջմիածին, երբոր Մովսէս կաթողիկոսէ Յովհաննավանքի ուսուցիչ կոչուեցաւ (§ 1649)։ Դավրիժեցին, որ հասած է զայն լսել, հիացմամբ կը գրէ, թէ էրէ աշխարհս ամենայն ոգւոց և հեզաբարոյ ընթացողք բանն ի բերանոյ նորա (ԴԱՎ. 307)։ Արդէն յիշեցինք թէ Վժանեցիին մահը տեղի ունեցաւ 1631'ին (§ 1665), և իբր պատճառ կը յիշէ Դավրիժեցին, թէ ցաւոց տալի անարկացեալ էր ի մարմնոյ նորա, և թէ բժիշկին անհմտութենէն և անյարմար դեղեր գործածելէն, հիւծեալ մաշեցան անդամք իւր տկարացեալ, և այնպէս վճարեցաւ զկեանս իւր (ԴԱՎ. 309)։ Վժանեցիին աշակերտներուն գլխաւորը՝ և ուսումները եւս քանզեւս զարգացնողն ալ Սիմէոն Ջուղայեցին է, զոր վերջէն Փիլիպպոս ուսուցչութեան կոչեց, երբ Յովհաննավանքի դպրոցը էջմիածին փոխադրեց (§ 1680)։ Կը պատմուի թէ երբ Խաչատուր Կեսարացի նուիրակ ղրկուեցաւ Լեհաստան (§ 1660), իրեն կ'ընկերանար Սիմէոն Ջուղայեցին, և այնտեղ դասատեսան հոլով ճառամբլեան Ֆռանկաց, և ինքզինքնին տկար զգալով գիտական հմտութեանց մէջ, դառնալնէն ետքը կարէ յօժարութեամբ և ջերմեռանդ սրտիւ և պատուաւոր կարգաւ հետեւեցան ուսմանց, բայց աւելի Սիմէոն, որ երիտասարդագոյն էր, և կարէ առաւել աճեցոյց զուսումն իւր (ԴԱՎ. 310)։ Սիմէոն երեք տարի անընդհատ էջմիածինի մէջ ուսմանց պարապելէ ետքը, Ասպահան գնաց Խաչատուր Կեսարացիի մօտ, որ վիճակին առաջնորդ էր եղած, և այնտեղ ալ շարունակեց իւր ինքնօգնութեամբ աշխատութիւնները, վասնզի Խաչատուր ուսմանց պարապողները ի մարմնական գործոց յազատ պահէր, և Սիմէոնի վրայ առաւել գութ և խնամ ունէր։ Այդ Խաչատուրն է որուն Լեհաստանի նուիրակութիւնը մեծ գրգիռ տուած էր Արեւմտեան զարգացման արդիւնքները Հայաստանի մէջ փոխադրել, և այս փափաքով տպարան ալ բացաւ 1640'ին Ասպահանի մէջ (ԴԱՎ. 210), զոր կազմեց ամենայն ի վարդապետաց ու աբեղայից, այլ խորով հանճարով յոյժ անձեալ երեւեցոյց (ԺՄԳ. 605)։ Յիշատակարանին մէջ յիշուած են Սիմէոն Ջուղայեցի վարդապետն, և Յովհաննէս վարդապետ մը, որ գնացեալ աշխարհն Լատինացւոց, որդեօ զի ուսեալ ի նոցանէ և եկեալ աշխարհս և հաստատեսցէ տպագրութեան արհեստը ի մէջ Հայաստանեայց (ԺՄԳ. 606)։ Իրաւունք կը զգանք սոյն Յովհաննէսը նոյնացնել այլուր յիշատակուած Յովհաննէս Ջուղայեցի վարդապետին հետ (ՏՊԱ. 86), որ իւր յաջողակութիւնը Իտալիոյ մէջ սկսաւ գործադրել, թէպէտ կը խոստովանի ըստ հրամանի և ըստ կամաց Կեսարացւոյն գործի ձեռնարկած ըլլալը (ՏՊԱ. 87)։ Սիմէոն քերականութիւն (ԴԱՎ. 312) և տրամաբանութիւն (ԴԱՎ. 313) մըն ալ շարադրեց, Պրոկղի նոր թարգմանութիւնը ուղղեց, և անկէ ետքն է որ էջմիածինի ուսուցիչ եղաւ, իսկ վերջէն 1651'ին կը յիշատակուի իբր արքեպիսկոպոս Նոր

*Ջուղայի* (ՏԱՇ. 363)։ *Կեանքին վերջին տարիները ուզած է «տրամադրութեան աղօթս երթալ յաշխարհն Յունաց», որ է Օսմանեան գաւառները, բայց Եւդոկիոյ մէջ կը հիւանդանայ և կը վախճանի 1657 փետրուար 27'ին «ոսկեհոցէց պահոցն», որ ճշգիւ կը համադիպի երրորդ ուրբաթին, և այնտեղ կը թաղուի* (ԴԱՎ. 314)։ *Իսկ Խաչատուր Կեսարացին աւելի կանուխ վախճանած կ'ըլլայ, եթէ Սիմէոն 1651'ին, Փիլիպպոսի կենդանութեան առեն Սպահանի գաւառին առաջնորդն էր, իբր Խաչատուրի յաջորդ*։

**ԻԼՎՈՎԱՑԻ ԵՒ ԴԱՒՐԻԺԵՑԻ**

**1712**. *Ժամանակակից վարդապետներէն յիշատակելի է նաև Սահակ Իլվովացի «է փորձոց տանէ», որ պատուած կրթութիւնը իւր հայրենեաց մէջ առնելով, Նիկոլի նենգութիւններէն զզուած, Էջմիածին կու գայ ծնողաց հաւանութեամբ։ Այնտեղ հետզհետէ կը յառաջանայ ազգային հմտութեամբ, և Մայրաթոռոյ մէջ օտար լեզուներու համար թարգմանիչ և ուսուցիչ կը հանդիսանայ, և չորս ալ գիրքեր կը թարգմանէ լատիներէնէն, որք են Յովէլոս, Արէոպագացի, Գիրք պատճառաց, Բանք ատենախօսականք* (ԴԱՎ. 315), *որոնցմէ զատ կը յիշատակուին նաև Հոգեւոր կարգաց, Բարբառոյն աղօթից, Հրեշտակաբանութեան և Պատմութեան Ղուրանի* (ՀԴՊ. 296)։ *Սահակեանի գործունէութիւնը Փիլիպպոսի օրով սկսած, ու շարունակած է մինչև անոր յաջորդին ալ մահը։ Առանձին յիշատակութեան արժանի է նաև Առաքել վարդապետ Դաւրիժեցին, մանաւանդ այն մեծ արդիւնքին համար՝ որով վաթսնամեայ ժամանակամիջոցի համար ազգային պատմութեան առաջնորդն ու մեծ սատարողն եղած է։ Բնիկ Թաւրէզ քաղաքէ և Մայրաթոռի աշակերտած, «առէն խօս անել և վարժել և յաւուրս ծերութեան ժամանել եմ», կ'ըսէ, որով լոկ վանական կեանք անցուցած ըլլալը կ'իմացուի, առանց վարչական անցուդարձերու մասնակցելու, թէպէտև շրջապայութիւններ ունեցած պիտի ըլլայ, զի մանրամասնութիւններով կը պատմէ տեսւանդ կատարուած եղելութիւնները։ Տարիքը չյիշեր, այլ երբ 1651'ին պատմութիւն գրելու կը ձեռնարկէ Փիլիպպոս կաթողիկոսի բռնադատիչ սախպմամբ, «յոլովիլ ծերութեան» եղած կ'ըսէ զինքը, և թէ «ծեր էի, նաեւ յոյժ ցաւագար մարմնով, և ի լրման աւուրց պակասեալ, և ի պնդութենէ ձեռաց թուլացեալ դողդոջ»* (ԴԱՎ. 519)։ *Ուստի երբ ինքզինքը «յաշակերտութենէ Փիլիպպոսի կաթողիկոսի» կը կոչէ* (ԴԱՎ. 516), *աւելի պաշտօնական դիրքը կը դիտէ, զի հասակակից եղած կ'ըլլայ Փիլիպպոսի, իսկ ուսմամբ Վժանեցիին և Ջուղայեցիին աշակերտած պէտք է ըսուի, զի և անոնց սորվեցուցած արտաքին ուսումներուն ալ հմուտ կը տեսնուի՝ տուած բացատրութիւններէն եզրակացնելով։ Պատմութեան վրայ 4 տարի կ'աշխատի, բայց Փիլիպպոսի մահուընէ ետքը կը լքանէ, իսկ յաջորդին յորդորներով նորէն ձեռք կ'առնէ 1658'ին, և կը փակէ 1662'ին, ինչպէս կը գրէ յիշատակարանին մէջ* (ԴԱՎ. 518), *ինչպէս ալ գործին կէսին 1662 յուլիս 1'ը իբր գրելուն թուական կը ցուցնէ* (ԴԱՎ. 333)։ *Սակէ կրնանք հետեւցնել թէ շարայարեալ պատմութիւնը մինչև Լ գլուխին վերջն է, իսկ անկէ ետքը մինչև ԾԶ գլուխ եղող մասերը, որք իրարմէ անկախ նիւթեր են, կ'երեւի թէ առեն առեն գրած պատրաստ ունէր, և ետքէն պատմութեան ծայրը կցեց, թերևս մաս մըն ալ վերջէն աւելցուց, ինչպէս՝ «Այլոց պատմութեան բաւ յեղանակի անցեալ պատմութեանց» մակագրութիւնն ալ կը յայտնէ* (ԴԱՎ. 351)։ *Դաւրիժեցիին մահը, 1662'էն շատ ետքը եղած պիտի չըլլայ, զի Փիլիպպոսի յաջորդին գործերէն միայն զանգակատունին շինութիւնը կը պատմէ* (ԴԱՎ. 207) *և ուրիշ գործողութիւն չյիշեր միջանկեալ 8 տարիներու գործունէութենէն*։

**ՇԻՆԱՐԱՐ ՎԱՐԴԱՊԵՏՆԵՐ**

**1713**. *Պոնէ յիշատակնին պահելու համար յառաջ բերենք ուրիշ վարդապետներու ալ անունները, և իրենց կատարած շինութիւնները, հետևելով Դաւրիժեցիին տուած տեղեկութեանց։ Եսայի վարդապետ Մեղրեցի՝ Երընջակայ Ս. Կարապետի վանքին առաջնորդը, աւերեալ եկեղեցին, տուները, խուցերը և պարիսպները՝ բոլորովին քանդելով նորէն վերաշինեց աւելի ընդարձակ կերպով, և 1653 հոկտեմբեր 17'ին եկեղեցւոյն նաւա-*

կատիքը կատարեց (ԴԱՎ. 267)։ Զաքարիա վարդապետ Վաղարշապատեցի՝ Յովհաննավանքի առաջնորդն ալ, Փիլիպպոսի օրով գլխաւորներն էջմիածին փոխադրուելէն ետքը ձեռնարկեց ամենայն ինչ նորէն շինել աւելի ընդարձակ և վայելուչ։ Շինութիւնները աւարտեց 1652'ին, և Խաչվերացին օրը սեպտեմբեր 12ին, եկեղեցւոյ օծումը լրացուց։ Յոյժ ծերացած ըլլալով էջմիածին քաշուեցաւ, ուր վախճանեցաւ 1659 յուլիս 10'ին, Վարդավառի օրը, և թաղուեցաւ զանգակատան առջեւի քարայատակին մէջտեղը, որուն համար ինքն իսկ փողանի ալ պատրաստած էր (ԴԱՎ. 268)։ Մկրտիչ եպիսկոպոս Մակուեցի՝ Արտազու Ս. Թադէոսի առաջնորդ, իր միաբաններուն հետ նոյն վանքին վերաշինութեան ձեռնարկեց. 1650'ին աւարտեց եկեղեցին, և 1653'ին ժամատունը, և անոնցմէ ետքն ալ Ս. Սանդխտոյ վկայարանը և Նախատակ կոչուած եկեղեցին (ԴԱՎ. 269)։ Մարտիրոս եպիսկոպոս Մուղնեցին ալ, Մուղնու Ս. Գէորգ եկեղեցին և սենեակները ի հիմանց վերաշինեց, և ընդարձակագոյն պարիսպով պատեց Փիլիպպոսի օրով (ԴԱՎ. 270)։ Ոսկան վարդապետ Երեւանցի՝ Ուշիի Ս. Սարգիս վանքին նորոգութեան ձեռնարկեց, պարիսպն ու սենեակները շինեց, բայց եկեղեցին աւարտելու չհասաւ։ Իսկ Օշականի Ս. Մեսրոպի տաճարը ուղղակի Փիլիպպոս կաթողիկոսին կողմէ վայելուչ կերպով նորոգուեցաւ 1645'ին (ԴԱՎ. 270)։ Փիլիպպոս եպիսկոպոս Բջնեցի, Բջնիի Ս. Աստուածածին բարձրաբերձ և լայնանիստ և մեծաշուք տաճարը ձեռնարկեց նորոգել, Պետրոս Ջուղայեցի կամ Պետրոս Բդուղ հարուստ անձին ծախքով. և աւարտեց 1643'ին. իսկ շուրջանակի վանքն ու պարիսպը իր յաջորդ Մովսէս Բջնեցի վարդապետը լրացուց (ԴԱՎ. 271)։ Ասոնցմէ զատ Շողոթի եկեղեցին, Ագուլիսի վանքը և գիւղի չորս եկեղեցիները, Թավրէզի եկեղեցին, Դարաշամբի եկեղեցին, Ցղնայի եկեղեցին, և այլ յոլով շատ եկեղեցիս կ'ըսէ Դավրիժեցին, ամէնքն ալ Փիլիպպոսի աշակերտ վարդապետներուն ջանքով շինուեցան կամ նորոգուեցան (ԴԱՎ. 272)։ Այս կարգին կը յիշուի նաև Քասաղի վրայ եղող Աշտարակ գիւղի կամուրջը, զոր խոջայ Գրիգոր Երեւանցի, Մածակենց մականուանեալ, է հիմանէ մինչև ցկատարումն շինել տալու իր ծախքով 1664'ին է ձեռն Աստուծոյ (ԴԱՎ. 271)։ Այս ամէն շինութիւններ և վերաշինութիւններն ալ որոնք յիշուեցան, և այլ ևս շատեր որք յիշուած չեն, ամէնն ալ Փիլիպպոսի մեծագործ և աշխարհաշէն գործունէութեան արդիւնքներ են, զի նորա օրինակին և յորդորներուն զօրութեամբ կը կատարուէին։ Զմոռնանք գովութեան յիշատակ մըն ալ նուիրել ժամանակին ազգային եկեղեցասէր և բարեսէր զգացումներուն, որոնք այս կերպով օգտակար կ'ըլլէին 1639'ին դաշնագիրով հաստատուած խաղաղութեան տարիները (§ 1680), և միանգամայն առհաւատչեայ և սկզբնապատճառ կ'ըլլային բարեկարգութեան և զարգացման պտուղներուն, որոնք այդ առաջին ճիգերուն և խաղաղութեան հետեւանքն եղան։

**1714.** Ժամանակակից վարդապետներու ցուցակը փակելու համար անգամ մըն ալ յիշենք Գրիգոր Դարանաղեցի վարդապետը, որուն անունը տալու նոր առիթ չներկայացաւ,

**ԴԱՐԱՆԱՂԵՑԻԻՆ ՄԱՀԸ**

1624'ին Պալաթու եկեղեցիին կառուցմէն ետքը, որուն գործակցեցաւ և որուն համար հալածուեցաւ (§1640)։ Դարանաղեցին տարիքն առած և թափառայած կեանքէն յոգնած վերջապէս քաշուեցաւ Ռոդոսթոյ, որ կանուխէն իրեն սեփական վիճակ էր նշանակուած (§1604), կամ ինչպէս ինքն Աստուածաշունչին յիշատակարանին մէջ կ'ըսէ, է մեր սեփական օրինակ, է մէջ մեր սեփական վիճակէ հօրէն, և համաշխարհիկ եղեալ քաղաքացւոց և գեղջկացւոց, և կ'երեւի թէ այլ ևս անկէ հեռացած չէ։ Ռոդոսթոյ գրուած յիշատակարան մը 1639 մարտ 22'ին, է տեղւոյս առաջնորդութեան Դարանաղցւոյ Գրիգոր վարդապետին կ'ըսէ (11 ԱՄՍ. 8), և 1643 սեպտեմբերին [illegible] այնտեղ մեռած ըլլալը տապանաքարին վրայ կը կարդացուի (11 ԱՄՍ. 7)։ Այսպէս կը հնչուի բաւական իր վրայ խօսիլ տուած կեանք մըն ալ, որուն մեծ գովութիւնը թէպէտ անարուեստ և ոչ ալ անկողմնակալ, գոնէ ժամանակակից պատմութիւն

մը գրած ըլլալն է, որ տակաւին տպագրուած չէ։

**1715**. Վարդապետներէն ետքը կ'անցնինք ժամանակիս մէջ նահատակուած նոր վկաներու յիշատակներն ալ քաղել, ինչպէս որ սովորութիւն ըրինք արդէն։ Սարուխան Հիզանցի կամ Խիզանցի, արհեստով կօշկար,

**ՍԱՐՈՒԽԱՆ ԽԻԶԱՆՑԻ**

միանգամայն վարժ երգիչ և քնարահար, Խիզանէ Բաղէշ կը փոխադրուի, կ'ամուսնանայ և կ'այրիանայ երկու զաւակներով։ Պատահմամբ ծանօթութիւն կ'ընէ կնոջ մը հետ, որ ինքզինքը քրիստոնեայ և այրի կը յայտարարէ, ամուսնութիւնը կ'որոշուի, և օրինօք կը պսակուի եկեղեցւոյ մէջ, և քրիստոնէաբար կ'ապրին միասին երեք տարի։ Անկէ ետքը կը յայտնէ կինը, որ ինքն քուրդ և մահմետական է, բայց քրիստոնեայ ըլլալու համար իւր ամուսնոյն քովէն փախած և ինքզինքը ծածկած է։ Սարուխան կը զգայ թէ մեծ վտանգի մէջ ինկած է, բայց կը լռէ ու կեանքը կը շարունակէր, մինչև որ կնոջ ամուսին եղող Քուրդը Բաղէշ գալով կինը կը գտնէ, և աղմուկ կը թողու քաղաքին մէջ թէ քրիստոնեաներ իւր կինը յափշտակած և բռնի իրենց հաւատքին դարձուցած են։ Սարուխան կը ձերբակալուի, դատաւորի և իշխանի առջևները կը հանուի, ուրացութեան կը բռնադատուի, ի մահանոց և ի Նէմ բանդի կը փակուի (ՆՈՐ. 439), բայց հնար չըլլար զինքն ուրացութեան հաւանեցնել, ուստի կրակով սպանութեան կը դատապարտուի, և գլուխը չոճ մի ճոյոլ, ոտքէն զարնելով բոցերուն մէջ կը նետեն, և այնպէս կը նահատակուի, 1631'ին առաջաւորաց ուրբաթ օրը, փետրուար 4'ին, երբ Փիլիպպոս Աղբակեցին ալ նուիրակութեամբ Բաղէշ կը գտնուէր.

**1716**. Օսմանեանց և Պարսից պատերազմին միջոցին էր 1638'ին, որ Մաաւմ անուն պարսիկը սուտ համբաւով Օսմանեան բանակէն փախուստ տալով Թաթար գունդ մը, որ Կոտէից կամ Երևանի նահանգը կ'ասպատակէր (ՋԱՔ. Բ. 19)։ Փախչողներ կրցածնին մեկ-

**ԿՈՏԷԱՑԻՔ ԵՒ ՂԸԶԼԱՐ**

ներ տանելու հետամուտ, երկու Կոտէացի գեղադէմ պատանիներ ալ կապած կը տանէին իրենց հեշտութեան զոհ, Արծնի գիւղին Դժուարադէմ կոչուած քարաժայռ դահավէժին մօտ, կը հաւանին կապերը քակել, և պատանիներ յանուանն Քրիստոսին ազատելու և ուրացութեամբ չկորսնցնելու նպատակով, յիշեցին անուն Աստուծոյ, և անկան ի տուրանըն ի վայր և մեռան։ Քարաժայռին մէջ պահուըտած ոմանք, անոնց մարմինները տարեալ ի հէջն Աջմնի՝ թաղեցին (ՋԱՔ. Բ. 23)։ Անձնազոհ նահատակներու օրինակներ ցանցառ չեն վկայաբանութեանց մէջ, և անոնց կարգին պէտք է դասել այդ երկու Կոտէացի պատանիներն ալ, որոց անունը անյայտ է մնացած։ Նոյն փախուստի միջոցին ուրիշ այլազգներ ալ ձեռք կը ձգեն Ղըզլար անուն մանկամարդ կին մը, Նորագաւիթ գիւղէն, վաճառական Սեաւ Զաքարիայի կողակից, և հափափելով իրենց ձիուն վրայ կ'առնեն, բայց Ղըզլար ազատելու համար զինքն վար կը ձգէ։ Երկու երեք անգամ այդ ճիգը կը կրկնուի, մինչև որ Թաթարներ հեռուէն Պարսիկներու մօտենալը տեսնելով՝ ուրախացեալ սրտին զերանեալ հինն Ղըզլար, թողին կենաց և տարան, որ առած վէրքերուն երեսէն եօթն օր ետքը վախճանեցաւ, օրինաւորապէս հաղորդուելէ ետքը (ՋԱՔ. Բ. 24)։ Ասոր ալ անունը նահատակներու կարգին դասելու չենք վարանիր, քանի որ հաւատոյ և սրբութեան պաշտպանութեան համար եղան Ղըզլարի դիմադրութիւնն ու մահը։

**1717**. Գալուստ քահանայ Արախսա գիւղի, Երևանի գաւառին մէջ, մկրտած էր Բասէնէ գաղթած չքաւոր մէկու մը նորածինը, և խղճալով անոր աղքատութեան 12 լիտր ալ ցորեն տուած էր իբր ողորմութիւն։ Օր կ'անցնի և Բասենցի գաղթականին կնոջ հայրն ու եղբայրը ետևէն կու գան, և կը սկսին պահանջ յարուցանել թէ իրենց աղջիկը առևանգած և ինչքերը գողցած է, և գործը դատաւորին առջևը կը տանին, որ վճարման վճիռ կու տայ։ Մարդիկը տալու բան չունէին, եթէ բան մը առած ալ ունէին, վատնեալ էին, և ազատելու համար կ'որոշեն

**ԳԱԼՈՒՍՏ ԱՐԱԽՍԱՑԻ**

*ուրանալ ; և աւելի արժանիք ցուցնելու համար խօսք ալ կը խառնեն, թէ իրենք ուրացութեան միտքով եկած էին, բայց թէ Գալուստ քահանան զիրենք առիպեց նորածինը մկրտել, մինչեւ իսկ կ'ըսեն թէ կաշառք ալ տուաւ զիրենք համոզելու։ Այսչափը կը բաւէ Գալուստը Երեւանի առեանը քաշելու և խիստ հարցափորձի ենթարկելու. բայց Գալուստի բացատրութիւնները օգուտ չեն ունենար, թէ անոնք քրիստոնեայ էին, թէ մկրտութիւնը իրենք ուզեցին, թէ ցորենը ողորմութիւն տուաւ, և վերջէն կրօնափոխ ըլլալնին առջի գործերը չալլայլեր։ Ուրացութիւնը չուտով կ'առաջարկուի իբր ազատութեան պայման, որուն կը դիմագրէ Գալուստ, թէպէտ տէէր էր ի ձեռս Ճէտտ–Բէյէ (ՉԱՔ.Բ.31)։ Կը բանտարկուի, զինքն համոզելու եկող կարդացողները ետ կը դարձնէ, և վերջապէս քարկոծման վճիռը կը տրուի։ Անհնարին ձաղանքով և խոշտանգանքներով կը տանին քահանան քաղաքին արեւմտեան դուռը, քրիստոնեաներն ու բոշաները կը ստիպեն քարկոծելու, և երբ ամէնքը կ'ընդդիմանան ու կը փախչին, Պարսիկներ վրան կը յարձակին և քարերու ներքեւ կը թաղեն Գալուստ Արախսացի քահանան։ Նահատակութեան օրը եղած է 1640'ին յամսեան նաւասարդոյ, առանց որոշ ամսաթիւի, որ տարին Բուն բարեկենդանը կ'իյնար փետրուար 15'ին։ Մարմինը թաղուած է Ս. Անանիայի անապատը (ՉԱՔ.Բ.32), Մովսէս Տաթեւացիին վանքը։*

**1718.** *Նիկողայոս Տիգրանակերտցի մականուանեալ, որովհետեւ Հայերը սովորած են այդ անունը տալ հին Ամիդ, և այժմ Տիարպէքիր քաղաքին, 15 տարեկան, և տեսլեամբ գեղեցիկ և հասակաւ վայելուչ պատանի մըն էր յիշեալ քաղաքը (ԴԱՎ.405)։ Զինքը գգուել ուզող Տաճիկներուն կ'ընդդիմանայ ու կ'անարգէ, և իբր Տաճիկներու հաւատքին հայհոյող՝ դատաւորին առեանը կը հանուի։ Պատանի Նիկողայոսի հերքումին դիմաց, երկու սուտ վկայ կը բերեն, և երբ Նիկողայոս ուրացութեան չզիջանիր, մահուան վճիռ կ'արձակուի։ Կուսակալը կը միջամտէ որ խոստումներով և աղաչանօք համոզէ պատանին, և երբ չյաջողիր՝ վճիռին գործադրութիւնը կը հրամայէ։ Բոլորովին մերկ և ձեռուըները ետեւը կապուած քաղաքին մէջ պտտցնելէն ետքը, մահապարտութեան տեղը կը տանին, և կրկին սպառնալիքներով և խոստումներով կը փորձեն, որ միջոցին Մարտիրոս քահանան արմաւի հատի մէջ հաղորդը ծրարելով կը յաջողի Նիկողայոսին ճաշակել տալ և փախչիլ։ Վերջապէս երկու ձեռուըները և երկու ոտուըները հետզհետէ վէմին վրայ կը ջախջախեն, և մինչեւ երեկոյ այնպէս կը թողուն։ Միւս օրը տուն մը կը փոխադրեն, ուր երրորդ օրը հոգին աւանդեց։ Կատարումն նահատակութեան սրբոյն Նիկողայոսի կը դրուի 1642 ապրիլ 15'ին (ԴԱՎ.409), որ կը հանդիպի զատկի ուրբաթին, և աւելի կը յարմարի տանջանաց օրուան, որով մահը կրնայ դրուիլ 17'ին, Նոր կիրակիին։ Դավրիժեցին կ'ըսէ թէ Հարստացեալ ոմն, զորոյ անունն ոչ գիտեմ, Նիկողայոսի աջը և տանջանաց վէմը, նորաշէն եկեղեցւոյ հիմին մէջ զետեղեց. իսկ Յայսմաւուրքը կ'ըսէ թէ այդ բանը առաջնորդ քաղաքին ըրած է (ՅԱՍ.Ա.168)։ — Տասնըհինգ տարեկան նահատակի մըն ալ յիշատակը կ'ընէ Քէօմիւրճեան, գրելով. Ե- Մանուկըն Բողէն ՃԱՌ, Նահատակին ամաց ՌՆԳԵ-ամեան (ՉԵԼ.78), սակայն հնար չէ նոյնացընել 15 տարեկան Նիկողայոսի հետ, վասն զի այս գերեզմանը Կ-Պոլսոյ Բերայի մէջ է, և թուականն ալ ՃԱՌ կամ ՌՃԱ, այսինքն 1652 է. ուստի անծանօթ մնացած Մանուկ կոստանդնուպոլսեցի նահատակի մը պէտք է վերագրել այդ յիշատակութիւնը։*

**1719.** *Ուրիշ Տիարպէքիրցի նոր վկայ մըն ալ Խաչատուր Տիգրանակերտցին է, Նիկողայոսի նման պարագաներու մէջ նահատակուած, աւելի սրտառուչ կերպով։ Իբրև ամաց տասնեց էր Խաչատուր, գեղեցկատես և վայելչահասակ երիտասարդ մը, յոյժ հոգեւէր և եկեղեցասէր, դարբնութեան արհեստին զբաղած, քաղաքին մեծ մզկիթին մօտերը։ Օր մը երբ մզկիթին աղբիւրէն կը լուացուէր, ամիր և կանաչագլուխ Տաճիկ մը զինքն կը վռնտէ, և Խաչատուրի ընդդիմանալուն*

մը գրած ըլլալն է, որ տակաւին տպագրուած չէ։

**ՍԱՐՈՒԽԱՆ ԽԻԶԱՆՑԻ**

**1715.** Վարդապետներէն ետքը կ'անցնինք ժամանակիս մէջ նահատակուած նոր վկաներու յիշատակներն ալ քաղել, ինչպէս որ սովորութիւն ըրինք արդէն։ Սարուխան Հիզանցի կամ Խիզանցի, արհեստով կօշկար, միանգամայն վարժ երգիչ և քնարահար, Խիզանէ Բաղէշ կը փոխադրուի, կ'ամուսնանայ և կ'այրիանայ երկու զաւակներով։ Պատահմամբ ծանօթութիւն կ'ընէ կնոջ մը հետ, որ ինքզինքը քրիստոնեայ և այրի կը յայտարարէ, ամուսնութիւնը կ'որոշուի, և օրինօք կը պսակուի եկեղեցւոյ մէջ, և քրիստոնէաբար կ'ապրին միասին երեք տարի։ Անկէ ետքը կը յայտնէ կինը, որ ինքն քուրդ և մահմետական է, բայց քրիստոնեայ ըլլալու համար իւր ամուսնոյն քովէն փախած և ինքզինքը ծածկած է։ Սարուխան կը զգայ թէ մեծ վտանգի մէջ ինկած է, բայց կը լռէ ու կեանքը կը շարունակէր, մինչև որ կնոջ ամուսին եղող Քուրդը Բաղէշ գալով կինը կը գտնէ, և աղմուկ կը թողու քաղաքին մէջ թէ քրիստոնեաներ իւր կինը յափշտակած և բռնի իրենց հաւատքին դարձուցած են։ Սարուխան կը ձերբակալուի, դատաւորի և իշխանի առջևները կը հանուի, ուրացութեան կը բռնադատուի, ի ժահահոտ և ի նեխմ բանտի կը փակուի (ՆՈՐ. 439), բայց հնար չըլլար զինքն ուրացութեան հաւանեցնել, ուստի կրակով սպանութեան կը դատապարտուի, և գլուխը կոճ մի փայտի, ուժգին զարնելով բոցերուն մէջ կը նետեն, և այնպէս կը նահատակուի, 1631'ին առաջաւորաց ուրբաթ օրը, փետրուար 4'ին, երբ Փիլիպպոս Աղբակեցին ալ նուիրակութեամբ Բաղէշ կը գտնուէր.

**ԿՈՏԷԱՑԻՔ ԵՒ ՂԸՋԼԱՐ**

**1716.** Օսմանեանց և Պարսից պատերազմին միջոցին էր 1638'ին, որ Մասում անուն պարսիկը սուտ համբաւով Օսմանեան բանակէն փախուստ ստիպեց Թաթար գունդ մը, որ Կոտէից կամ Երևանի նահանգը կ'ասպատակէր (ՁԱՔ. Բ. 19)։ Փախչողներ կրցածնին մէկտեղ տանելու հետամուտ, երկու Կոտէացի գեղադէմ պատանիներ ալ կապած կը տանէին իրենց հեշտութեան զոհ, Արծնի գիւղին Դժուարադէմ կոչուած քարաժայռ դահավէժին մօտ, կը հասնին կապերը քակել, և պատանիներ յանօրէն դըռն ծառայութենէն ազատելու և ուրացութեամբ չկորսուելու նպատակով, ընկեցին անձանց Աստուծոյ, և անկան ի քարանցն ի վայր և մեռան։ Քարաժայռին մէջ պահուըտած ոմանք, անոնց մարմինները տարեալ ի գեղջն Արծնի՝ թաղեցին (ՁԱՔ. Բ. 23)։ Անձնազոհ նահատակներու օրինակներ ցանցառ չեն վկայաբանութեանց մէջ, և անոնց կարգին պէտք է դասել այդ երկու Կոտէացի պատանիներն ալ, որոց անունը անյայտ է մնացած։ Նոյն փախուստի միջոցին ուրիշ այլազգներ ալ ձեռք կը ձգեն Ղըզլար անուն մանկամարդ կին մը, Նորագաւիթ գիւղէն, վաճառական Սեաւ Զաքարիայի կողակից, և հափափելով իրենց ձիուն վրայ կ'առնեն, բայց Ղըզլար ազատելու համար զինքն վար կը ձգէ։ Երկու երեք անգամ այդ ճիգը կը կրկնուի, մինչև որ Թաթարներ հեռուէն Պարսիկներու մօտենալը տեսնելով՝ ուրախացեալ արարին զերանելի կինն Ղըզլար, թողին կիսամահ և փախեան, որ առած վէրքերուն երեսէն եօթն օր ետքը վախճանեցաւ, օրինաւորապէս հաղորդուելէ ետքը (ՁԱՔ. Բ. 24)։ Ասոր ալ անունը նահատակներու կարգին դասելու չենք վարանիր, քանի որ հաւատոյ և սրբութեան պաշտպանութեան համար եղան Ղըզլարի դիմադրութիւնն ու մահը։

**ԳԱԼՈՒՍՏ ԱՐԱԽՍԱՑԻ**

**1717.** Գալուստ քահանայ Արախսա գիւղի, Երևանի գաւառին մէջ, մկրտած էր Բասէնէ գաղթած չքաւոր մէկու մը նորածինը, և խղճալով անոր աղքատութեան 12 լիտր ալ ցորեն տուած էր իբր ողորմութիւն։ Օր կ'անցնի և Բասենցի գաղթականին կնոջ հայրն ու եղբայրը ետևէն կու գան, և կը սկսին պահանջ յարուցանել թէ իրենց աղջիկը առևանգած և ինչքերը գողցած է, և գործը դատաւորին առջևը կը տանին, որ վճարման վճիռ կու տայ։ Մարդիկը տալու բան չունէին, եթէ բան մը առած ալ ունէին, վատնեալ էին, և ազատելու համար կ'որոշեն

*ուրանալ ; և աւելի արժանիք ցուցնելու համար խօսք ալ կը խառնեն, թէ իրենք ուրացութեան միտքով եկած էին, բայց թէ Գալուստ քահանան զիրենք ստիպեց Նորածինը մկրտել, մինչև իսկ կ'ըսեն թէ կաշառք ալ տուաւ զիրենք համոզելու։ Այսչափը կը բաւէ Գալուստը Երևանի ատեանը քաշելու և խիստ հարցափորձի ենթարկելու. բայց Գալուստի բացատրութիւնները օգուտ չեն ունենար, թէ անոնք քրիստոնեայ էին, թէ մկրտութիւնը իրենք ուզեցին, թէ ցորենը ողորմութիւն տուաւ, և վերջէն կրօնափոխ ըլլալնին առջի գործերը չայլայլեր։ Ուրացութիւնը չուզով կ'առաջարկուի իբր ազատութեան պայման, որուն կը դիմադրէ Գալուստ, թէպէտ [illegible] (ՁԱՔ.Բ.31)։ Կը բանտարկուի, զինքն համոզելու եկող կարդացողները ետ կը դարձնէ, և վերջապէս քարկոծման վճիռը կը տրուի։ Անհնարին ձաղանքով և խոշտանգանքներով կը տանին քահանան քաղաքին արևմտեան դուռը, քրիստոնեաներն ու բոչաները կը ստիպեն քարկոծելու, և երբ ամէնքը կ'ընդդիմանան ու կը փախչին, Պարսիկներ վրան կը յարձակին և քարերու ներքևը կը թաղեն Գալուստ Արախսացի քահանան։ Նահատակութեան օրը եղած է 1640'ին յաւուր տեառնընդառաջոյ, առանց որոշ ամսաթիւի, որ տարին Բուն բարեկենդանը կ'իյնար փետրուար 15'ին։ Մարմինը թաղուած է Ս. Անանիայի անապատը (ՁԱՔ.Բ.32), Մովսէս Տաթևացիին վանքը։*

**1718**. *Նիկողայոս Տիգրանակերտցի մականուանեալ, որովհետև Հայերը սովորած են*

**ՆԻԿՈՂԱՅՈՍ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏՑԻ**

*այդ անունը տալ հին Ամիդ, և այժմ Տիարպէքիր քաղաքին, 15 տարեկան, և տեսլեամբ գեղեցիկ և հասակաւ վայելուչ պատանի մըն էր յիշեալ քաղաքը (ԴԱՎ.405)։ Զինքը գգուել ուզող Տաճիկներուն կ'ընդդիմանայ ու կ'անարգէ, և երբ Տաճիկներու հաւատքին հայհոյող՝ դատաւորին ատեանը կը հանուի։ Պատանի Նիկողայոսի հերքումին դիմաց, երկու սուտ վկայ կը բերեն, և երբ Նիկողայոս ուրացութեան չզիջանիր, մահուան վճիռ կ'արձակուի։ Կուսակալը կը միջամտէ որ խոստումներով և ապաչանօք համոզէ պատանին, և երբ չյաջողիր՝ վճռոյն գործադրութիւնը կը հրամայէ։ Բոլորովին մերկ և ձեռուըները ետևէը կապուած քաղաքին մէջ պտտցնելէն ետքը, մահապարտութեան տեղը կը տանին, և կրկին սպառնալիքներով և խոստումներով կը փորձեն, որ միջոցին Մարտիրոս քահանան արմաւի հատի մէջ հաղորդը ծրարելով կը յաջողի Նիկողայոսին ճաշակել տալ և փախչիլ։ Վերջապէս երկու ձեռուըները և երկու ոտուըները հետզհետէ վէմին վրայ կը ջախջախեն, և մինչև երեկոյ այնպէս կը թողուն։ Միւս օրը տուն մը կը փոխադրեն, ուր երրորդ օրը հոգին աւանդեց։ Կատարումն Նահատակութեան սրբոյն Նիկողայոսի կը դրուի 1642 ապրիլ 15'ին (ԴԱՎ.409), որ կը հանդիպի զատկի ուրբաթին, և աւելի կը յարմարի տանջանաց օրուան, որով մահը կրնայ դրուիլ 17'ին, Նոր կիրակիին։ Դավրիժեցին կ'ըսէ թէ [illegible], Նիկողայոսի աջը և տանջանաց վէմը, Նորաշէն եկեղեցւոյ հիմին մէջ զետեղեց. իսկ Ցայսմաւուրքը կ'ըսէ թէ այդ բանը առաջնորդ տեղւոյն ըրած է (ՅԱՍ.Ա.168)։ — Տասնըհինգ տարեկան Նահատակի մըն ալ յիշատակը կ'ընէ Քէօմիւրճեան, գրելով. Ե-Մանուկն [illegible] ՃԱՌ, Նահատակն ամաց հնգետասան (ՁԷԼ.78), սակայն հնար չէ նոյնացընել 15 տարեկան Նիկողայոսի հետ, վասն զի այս գերեզմանը Կ-Պոլսոյ Բերայի մէջ է, և թուականն ալ ՃԱՌ կամ ՌՃԱ, այսինքն 1652 է. ուստի անծանօթ մնացած Մանուկ Կոստանդնուպոլսեցի Նահատակի մը պէտք է վերագրել այդ յիշատակութիւնը։*

**1719**. *Ուրիշ Տիարպէքիրցի նոր վկայ մըն ալ Խաչատուր Տիգրանակերտցին է,*

**ԽԱՉԱՏՈՒՐ ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏՑԻ**

*Նիկողայոսի նման պարագաներու մէջ նահատակուած, աւելի սրտառուչ կերպով։ Իբրև ամաց քսանից էր Խաչատուր, գեղեցկատեսիլ և վայելչահասակ երիտասարդ մը, յոյժ հոգևոր և եկեղեցասէր, դարբնութեան արհեստին զբաղած, քաղաքին մեծ մզկիթին մօտերը։ Օր մը երբ մզկիթին աղբիւրէն կը լուացուէր, [illegible] Տաճիկ մը զինքն կը վանտէ, և Խաչատուրի ընդդիմանալուն*

վրայ, ժխոր մը կը փրթի, և Տաճկաց օրէնքին հայհոյած ըլլալու զրպարտութեամբ և սուտ վկաներով դատաւորին առջևը կը հանեն։ Սա առելի գութով և ողոքանօք կը վարուի, գործը միւֆթիին կը ղրկէ, որ մահուան պատգամ կու տայ, և դատաւորը կը պարտաւորուի վճիռ արձակել. կուսակալն ալ քաղցր խանդաղատական բանիւք կը ջանայ երիտասարդը ազատել ուրացութեան միջոցներով։ Մէկ երկու անգամ առանձինն կը թողու, գուցէ մտաբերէ, բայց Խաչատուր միշտ աւելի ուժգնութեամբ կը պնդէ իր ընդդիմութիւնը, մինչև որ կուսակալն ալ կը հրամայէ պատգամին գործադրութիւնը, որ քերթել հարկ սեպած էր, Խաչատուրին՝ [illegible] ըլլալուն համար (ԴԱՎ. 411)։ Նախ մերկացնելով և ձեռուրները ետևը կապելով ձաղանօք և խոշտանգանօք քաղաքին մէջ կը պտտցնեն, և քաղաքին Նոր դուռին առջևը, թէ առջևէն և թէ ետևէն մորթը մինչև մէջքը քերթելով անգամ մըն ալ քաղաքին մէջ կը պտտցնեն։ Անկէ ետքը կը բերեն մեծ հրապարակը, և վէմի վրայ նախ բազուկները, վերջէն սրունքները կը ջախջախեն, և նահատակը նուաղեալ գետին կը տապծուի։ Այդ վիճակին մէջ, նախ ջուր կը խմէ, և վերջէն հաղորդ կ'ընդունի հացի մէջ ծրարուած, և այնպէս կը թողուի։ Խաչատուր Բաղիշեցի վարդապետ և Սամուէլ Բալուեցի աբեղայ, իրեն մօտը կը մնան մխիթարելով մինչև որ գիշերուան մէջ հոգին կ'աւանդէ։ Մարմինը կը փոխադրուի եկեղեցի, և օր մը հասարակաց բարեպաշտութեան առարկայ կը թողուի, և վերջէն կը թաղուի մեծաշուք հանդէսով։ Կուսակալը քառներու դրդմամբ կ'ուզէ մահապարտի մը յիշատակը փառաւորողները պատժել, այլ կ'արգիլուի այն օր Եէնիչէրիներուն իրեն դէմ ելլելովը, և չաբաթ մը բերդին մէջ արգելական պահուելովը, և [illegible] եղած կ'ընդունուի քրիստոնէից ազատութիւնը։ Նահատակութեան օրը եղած է 1659 օգոստոս 20'ին (ԴԱՎ. 417) որ կը հանդիպի Վերափոխման հինգշաբթիին։ Խաչատուրի ալ յիշատակը Յայսմաւուրքին մէջ անցած է (ՅԱՍ. Բ. 89)։

**ՍԻՐՈՒՆ ԳՆՈՒՆԻ**

**1720.** Սիրուն Գնունի կամ Այիւրցի, Վասպուրականի Գնունի կամ Ամուկ գաւառին Այիւր գիւղէն, ամուսնացած էր արդէն, և կարօտ ըլլալով մահմետականի մը ծառայութեան մտած էր Վանայ մէջ։ Օր մը որ իր տիրոջ համար բեռ մը կեռաս կը բերէր Խլաթի կողմէն, Վանայ մէջ Տաճիկ տղաքներ վրան ինկան կեռասը յափշտակելու, և Սիրուն ապրանքը պաշտպանելու համար տղաքը կը վանէր, և արձակած քարերէն տղու մը գլուխը վիրաւորուեցաւ, և երկու ամիսէն մեռաւ։ Սիրունի տէրը զայն իսկոյն հեռացուց Այիւր՝ իր գիւղը, բայց գիւղին Տաճիկները զինքն կալանաւորեցին. տղուն ծնողքն ալ վրէժխնդրութիւն կը պահանջէին, բայց դատաւորն ու միւֆթին զինքն անպարտ արձակեցին և Սիրուն նորէն Այիւր դարձաւ։ Այս անգամ [illegible] Վանեցի կրօնամոլ Տաճիկներ, հաւաքուեցան։ Այիւր եկան, Սիրունը Վան բերին, մահ սպառնացան եթէ իրենց կրօնքը չընդունի. Սիրուն ուրացութեան յանձառու չեղաւ, ուստի ամէն տեսակ խոշտանգանքներ թափեցին վրան, բարակ չուանով բազուկները պրկելով, ծեծելով, քաշկռտելով, ու կախահարելով՝ քանի օր շարունակ քաղաքին մէջ ձաղանաց և խոշտանգանաց ենթարկեցին։ Որչափ ալ Սիրունի ծնողքն ու մերձաւորք առ երեսս ուրացութեան կը յորդորէին, Սիրուն երբեք յանձն չառաւ։ Տաճիկներ երեք օր ալ իրենց աղօթքները դադրեցուցին իբրև բողոքոյ ցոյց, սակայն անով ալ մահուան վճիռը չկրցան առնել դատաւորէն։ Ուստի երբոր նորէն քաղաքին մէջ կը պտտցնէին, կատաղիներէն մին կուշտէն վիրաւորեց զայն դաշոյնով, ուրիշ մը քարով գլուխը ջախջախեց, և այնպէս նահատակուեցաւ Սիրուն, Վանայ Նալբանտանոցի շուկային մէջ 1655'ին (ԴԱՎ. 421) օգոստոս 5'ին (ՆՈՐ. 471), Վերափոխման բարեկենդանի կիրակի օրը։ Մարմինը առաջ քաշկռտելով քաղաքէն հանեցին և քարկոծեցին, և անկէ ետքը քրիստոնեայք կրցան զայն առնել և թաղել ընդհանուր գերեզմանոցին մէջ։

*Սերունի ալ յիշատակը Ցայսմաւուրքին անցած է* (ՅԱՍ. Բ. 62)։

**1721.** *Յիշատակութեան արժանի կը սեպենք Վարագայ Ս. Նշանին գերութեան և ազատութեան եղելութիւնն ալ, զոր յայտ մանրամասնօրէն կը պատմէ Դաւրիժեցին* (ԴԱՎ. 382-402)։

**ՎԱՐԱԳԱՅ Ս. ՆՇԱՆԸ**

*Խօշաբի բերդին տէրն էր Սիւլէյման բէկ անուն բռնապետ մը, որուն քով ապաստան գտած էր Զօմար անուն նախկին կուսակալ մը, որ աւազակապետ էր դարձած։ Վանայ մէջ ալ զօրացած էր Հիւսէյին աղա անուն իշխանաւոր մը, կուսակալն ալ իրեն հպատակեցուցած։ Երկուքը միասին ընդդիմացան նոր եկող կուսակալին, և այս պատճառաւ իրենց վրայ ղրկուեցաւ Սինան աղա զօրավար մը։ Սաքկայ Հիւսէյինի և կուսակալի վրայ զօրանալու համար իրեն օգնութեան կանչեց Սիւլէյմանն ու Զօմարը, որոնք եկան, և Վանայ շրջակայքը և Հիւսէյինի կալուածները աւրած ատեննին, Վարագայ վանքն ալ եղան նոյն նպատակով, և հարուստ աւարի ակնկալութեամբ։ Միաբաններն ցրուեցան, և միայն երեք ծերեր մնացին, Յովհաննէս և Սահակ և Մովսէս աբեղաներ, որոնք Զօմարի ձեռքէն անտանելի չարչարանքներ կրեցին, որ վանքին գանձարանները յայտնեն, սակայն անոնք ամէնուն ալ տոկացին ըսելով թէ* [illegible] (ԴԱՎ. 387)։ *Այն ատեն աւարառուք անձամբ և Զօմար գլուխնին, եկեղեցիներուն պատերը ծեծելով և քանդելով գտան նախ պղնձեղինաց, յետոյ արծաթեղինաց գանձարանը, որուն մէջ էր Վարագայ Ս. Նշանն ալ, ամէն բան գրաւեցին, սկիհ և խաչ, աւետարան և գիրք, քշոց և բուրվառ, շուրջառ և վարագոյր, և մարդաչափ արծաթէ մի խաչ մէկ խորհուրդ կշռով, և իբր ի յարգանս Ս. Նշանին մոմ քահանայ մը դրին, և ամէնքը փոխադրեցին Խօշաբ։ Վարագի կողոպտուելուն օրն էր* 1651 (ԴԱՎ. 389), [illegible] ԴԱՎ. 398), *որ կ՚իյնայ մարտ 14՚ին։ Սիւլէյման ուզեց Ս. Նշանը իւր սահմանին մէջ եղող Հոգւոց վանքը դնել, բայց առաջնորդ Պետրոս եպիսկոպոս յանձն չառաւ, պատճառելով թէ պէտք է իւր տեղը դառնայ, և մնաց Սիւլէյմանի ապարանքը* (ԴԱՎ. 395)։ *Վանայ գլխաւորներէն Մարխաս Չէլէպի՝ Խանենց խօջայ Թումայի որդին, անձամբ Խօշաբ եկաւ Ս. Նշանը փրկանաւորելու, մինչև 7000 ղուրուշ խոստացաւ, բայց Սիւլէյման չզիջաւ* (ԴԱՎ. 396)։ *Սակայն աղետաբեր եղաւ հետևանքը։ Յորմէհետէ Ս. Նշանը գերուած էր, Խօշաբի երկրին բարեբերութիւնը նուազեցաւ։ Յիսնակի բարեկենդանին որ կը հանդիպէր նոյեմբեր* 16՚ին (ԴԱՎ. 391), *Զօմար Հիւսէյինին հետապնդելու համար շատ մը փորձանքներու հանդիպեցաւ, և վերջ ի վերջոյ ձեռք իյնալով սպանուեցաւ* (ԴԱՎ. 371)։ *Սիւլէյման իրեն դէմ եղած դաւաճանութիւնը զսպելու համար իր մեծամեծներէն երեքը բանտարկեց, բայց անոնց հաւատարիմները կանացի զգեստով իրեն մօտ երթալով զինքը սպաննեցին, Վարագի կողոպտուելուն տարեդարձին, 1652 աղուհացից հինգերորդ ուրբաթ օրը* (ԴԱՎ. 399), *որ այս անգամ կը հանդիպէր ապրիլ 2՚ին։ Սիւլէյմանի եղբայրը Իպրահիմ բէկ անոր յաջորդեց Խօշաբի տէրութեան մէջ։ Բայց այն ալ յաջողութիւն չտեսաւ, երկրին արգասաւորութիւնը հետզհետէ նուազեցաւ, 1653՚ին Լուսաւորչի պահքին, որուն բարեկենդանը կ՚իյնար յունիս 19՚ին, սաստիկ ձիւն տեղաց, և ցանք ու արօտ խանգարեց, ու խաշնամահ տարածուեցաւ։ Ետևէն Իպրահիմ ինքն ալ սաստիկ հիւանդացաւ* (ԴԱՎ. 401), *ուզեց գոնէ Ս. Նշանը Հոգւոց վանքը ղրկել, բայց Պետրոս եպիսկոպոս նորէն յանձնառու չեղաւ, և տեղը դարձնելու անհրաժեշտութիւնը զգացուց* (ԴԱՎ. 401)։ *Վանեցիք եղածները լսելով քաջալերուեցան, և Մարխաս Խանենց իշխանաւորը նորէն եկաւ, և 2000 ղուրուշի փրկանքով յաջողեցաւ Ս. Նշանը և կողոպտուած իրերէն որչափ ինչ մնացած էր ետ առնուլ, և ուրախութեամբ Վան բերել։ Վանեցիք վախցան նորէն Վարագի վանքին մէջ՝ ամայի լերան գագաթը դնել Ս. Նշանը, և պահեցին քաղաքին Ս. Տիրամայր եկեղեցին, որ անկէ ետքը աւելի յաճախ Ս. Նշան անունով կոչուած է։ Վարա-*

գայ Ս. Նշանին գերեզմանը տեղի ունեցաւ 1655'ին (ԴԱՎ. 401), որ է նոյն իսկ Փիլիպպոսի մահուան թուականը. իսկ ամսաթիւը նշանակուած չէ։ Այն երեք ծերունի աբեղաները՝ Յովհաննէս և Սահակ և Մովսէս՝ որոնք Ս. Նշանի համար չարչարուած էին, հազիւ տարի մը ևս կրցան ապրիլ. և իրարու ետևէ վախճանեցան 1652 տարւոյն մէջ (ԴԱՎ. 389), և գերեզմանը տեսնելու չհասան։ Պատմութիւնը չյիշեր ևս Վարագայ առաջնորդին անունը, որ կ'երևի թէ ապատակին հասնելուն՝ առաջին փախչողներէն մին եղած է։

1722. Վարագայ Ս. Նշանի պատմութեան առիթով յառաջ բերուած է Ս. Յովհաննու Կարապետի մասունքի մըն ալ յայտնութիւնը։ Երբոր Շահաբաս Առաջինի հրամանով Ջուղայ ալ բռնի կերպով գաղթելու կը ստիպուէր (§ 1589), հնար չէր եղած ամէն բան միասին փոխադրել, և շատ կարևոր բաներ ալ մոռցուեցան և մնացին, և Ջուղայի աւերակներուն մէջէն բախտ գտնողներ ալ եղան։ Մէհրամ անուն այլազգի մըն ալ խուզարկութիւններ ըրած ատեն, Վերին Կաթան կոչուած եկեղեցւոյն աւերակներուն մէջ, խեցեղէն աման մէջ տուփ մը կը գտնայ, որ քանի մի կտոր ոսկրներ ու մագաղաթի կտոր մը կը պարունակէր։ Արժէքաւոր բան մը կարծելով կը պահէ, մինչև որ լաւ մը տեղեկանայ, բայց միւս կողմէն իւր տունին բախտը կը շրջի, նախ կենդանիներ յետոյ զաւակները կը մեռնին, գործերն ալ կը ձախողին։ Շփոթած գործը կը յայտնէ իւր ծանօթներէն Դարաշամբի Շմաւոն եպիսկոպոսին, որ մագաղաթը կարդալով կ'իմանայ թէ Յովհաննու Կարապետի մասունքներ են, որոնք 972'ին Խրամ քաղաքի աւերման առթիւ Ջուղայ են բերուած (ԴԱՎ. 404), և Մէհրամի կամքը հաճեցնելով մասունքները կը պահէ։ Լուրը կը լսուի, և Ասպահանի Ջուղայեցիներ խօջայ Նազարի գլխաւորութեամբ՝ կ'ուզեն տէր

**Ս. ԿԱՐԱՊԵՏԻ ՄԱՍՈՒՆՔՆԵՐԸ**

ըլլալ, և Շմաւոն կը պարտաւորուի մասունքները յանձնել մագաղաթին հետ, որոնք Ասպահան կը տարուին, միայն մեծկակ կտոր մը իրեն կը պահէ։ Ջուղայի գաղութը 1605'ին կատարուած ըլլալով, մերձաւորաբար 1608'ին կրնանք դնել այդ մասունքներուն գիւտը, որուն վրայ բաւական ատեն կ'անցնի մինչև 1654'ին նորէն անոնց յիշատակութիւնը կ'ըլլայ։ Յակոբ եպիսկոպոս Ջուղայեցի, Փիլիպպոսի դառնալէն ետքը ձեռնարկած էր Դարաշամբի Ս. Նախավկայի վանքը նորոգել, երբ Շմաւոն եպիսկոպոս, որ յոյժ ծերացեալ պիտի ըլլար, Յակոբի լուր կուտայ մօտը պահած մասունքին վրայօք, և կը փափաքի զայն խաչի մը մէջ զետեղելով վանքին յիշատակ թողուլ։ Այս տեղ Դավրիժեցին Յակոբի բերանէն կը յայտարարէ, թէ ոչ էոյ հրաման է կանանց տեսանել զնշխարս սրբոյ է մեծ խաչին (ԴԱՎ. 405), և ասով կը հաստատուի հնաւանդ և յոյժ օրինաւոր սովորութիւն մը։ Վասնզի քանի որ խաչը յանուն Քրիստոսի նուիրագործուած և գործածուած կը նկատուի, յարմար չէր ըլլար անոր կցել սուրբի մը անունին նուիրագործումը։ Սակայն այսօր անխտիր կը տեսնենք խաչերու ակին մէջ սուրբերու մասունքներ դրուած, որ Լատինացւոց նմանողութեամբ եկամուտ մըն է։ Յակոբ պատշաճագոյն կերպով յատուկ մասնատուփ մը պատրաստել տուաւ, որ ծաղկեայ ոսկեայն, ոսկեզօծ ակներով ընդելուզեալ, և անոր մէջ զետեղեց Շմաւոնի պահած Ս. Կարապետի մասունքը, վրան ալ արձանագրելով շնորհօքն Աստուծոյ գո-տահմանցս, որուն մասին իբր ականատես կը խօսի Դավրիժեցին (ԴԱՎ. 405), զի իւր ժամանակին ալ պահուած պիտի ըլլար մասունքը Դարաշամբի Ս. Նախավկայի գանձարանը։ Ջենք գիտեր թէ այնտեղ կը մնայ տակաւին, վասն զի Ս. Նախավկայի վանքը, որ տակաւին Պարսկաստանի սահմանին մէջ կը գտնուի, բազմիցս կողոպտուած է, և շարունակ արշաւանքներու ենթարկուած տեղ մը եղած է։

# Տ· ՅԱԿՈԲ Դ· ՋՈՒՂԱՅԵՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԾԱԳՈՒՄ**

**1723**· *Փիլիպպոս կաթողիկոսի թաղումը վեց օր ուշացած էր (§ 1709), և այս պատճառով աւելի շատցած էր Էջմիածին եկող եպիսկոպոսներուն և վարդապետներուն թիւը, որոնք պէտք տեսան աթոռոյ պարապութեան միջոցը կարճել, և անմիջապէս Նոր կաթողիկոսն օծել և նստեցնել։ Մարտ 25'ին եղած էր Փիլիպպոսի մահը, և 31'ին թաղումը, Ս· Լուսաւորչի տօնին օրը։ Զատիկը մօտ էր, ուստի շտապեցին, և Ծաղկազարդի կիրակիին* 1655 *ապրիլ* 8'*ին կաթողիկոս օծուեցաւ Յակոբ Ջուղայեցի եպիսկոպոսը, որուն անունը տուինք Փիլիպպոսի բացակայելուն միջոցին* (§1686)։ *Ծաղկազարդին նախընթաց օրը՝ Ղազարու յարութեան յիշատակին հետ Աւետման ալ տօն էր, բայց չենք կրնար պնդել թէ այն օր տեղի ունեցած ըլլայ ընտրութեան համար ժողովը։ Փիլիպպոսի թաղումէն ետքը՝ որ օր ալ եղած ըլլայ ընտրական ժողովը, նկատելի կէտ մը կը մնայ, որ* ժողովեալ ժողովրդեան և եպիսկոպոսացն *կ'ըսուի միայն* (ԴԱՎ· 266), *և իշխանաւորներու յիշատակը չըլլար, որով հարկ կ'ըլլայ սոսկ եկեղեցական տարրով լրացած ըսել ընտրութիւնը։ Եւ ոչ ալ կը պահուի այն ձևը որ Փիլիպպոսի ընտրութեան առեն գործածուեցաւ, ազգային գլխաւոր կեդրոններու հաւանութիւնը առնելէն ետքը օծումը կատարելով* (§ 1666)։ *Պատմութիւնը բացատրած չէ թէ ինչ էր այդ շտապին շարժառիթը, և թէ ինչու զանց եղաւ աշխարհական տարրին մասնակցութեան պայմանը։ Միայն այս ինչ յայտնի է, թէ Յակոբի ընտրութիւնը ոչ մէկ կողմէ տժգոհութեան կամ տրտունջի տեղի չտուաւ։ Թերևս Փիլիպպոսի կողմէն յայտնուած յանձնարարութիւն մը պատկառանք ազդեց, բայց աւելի զօրաւոր եղած պիտի ըլլայ Յակոբի տեղակալութեան մէջ գտնուիլը՝ Փիլիպպոսի երկամեայ բացակայութեան միջոցին, և գործով ցուցած յաջողակութիւնը, և արդեամբ ստացած խրատութիւնը։ Կերպով մը զործադրուած է աթոռակիցներու շրջանին սովորութիւնը, զի Յակոբ առանց օծումի և առանց կաթողիկոսական անունի, օգնական կաթողիկոսի դերին մէջ կը գտնուէր։ Յակոբ բնիկ Ջուղայեցի էր, ծննդեամբ Հին Ջուղայէ, զի* 1680'*ին* 82 *տարեկան վախճանած ըլլալով,* 1598'*ին մարտին ծնած, և* 1605'*ին բռնի գաղութին* (§1589) 7 *տարեկան եղած կ'ըլլայ։ Իսկ կեանքը անցուցած պէտք է ըլլայ Նոր Ջուղայ կամ Ասպահան, մինչև Էջմիածինի աշակերտիլը, ուր ուսած կ'ըլլայ Մելքիսեդեկի և Սիմէոնի ձեռքին տակ։ Ըստ այսմ* 57 *տարեկան կաթողիկոսական աթոռ բարձրացած կ'ըլլայ, միայն* 6 *տարեկան պզտիկ Փիլիպպոսէ, որով աւելի կրտսեր ընկերակիցը պէտք է ըսել, և ոչ թէ անոր աշակերտը* (ՋԱՄ· 23)։ *Էջմիածինի մէջ շատ կարևոր դեր առանձնած պիտի ըսենք, քանի որ յարմար տեսնուած է կաթողիկոսական տեղակալութիւն վարելու։ Իսկ վերջին օրերու մէջ յիշուեցաւ նա՝ Դարաշամբի Ս· Նախավկայ վանքին նորոգութեան առթիւ* (§1722)։ *Իր երկարատև և վաստակաբեկ և արդիւնաւոր կաթողիկոսութիւնն ալ կը ցուցընէ, թէ խոհական և գործունեայ և ազդեցիկ անձ մը եղած է, և ամէնուն կողմէ արժանապէս գնահատուած է։*

**ԴԱՇՏԵՑԻՆԵՐ ՏԵՂԱՓՈԽՈՒԱԾ**

**1724**· *Ջուղայեցիին կաթողիկոսութեան սկիզբները տեղի ունեցաւ Նոր Ջուղայի ընդարձակման եղելութիւնը։ Հին Ջուղայի գաղթականը Ասպահանի մէջ առանձին թաղ մըն էր կազմած, քաղաքին մէջէն անցնող Զէնտէհրուտ գետին հարաւային կողմը, իսկ ուրիշ կողմերէ եկած Հայեր Ասպահանի մէջ զանազան թաղերու մէջ զետեղուած էին՝ Պարսիկ մահմետականներու եւ ուրիշ ազգերու հետ խառն։ Գողթն գաւառի Դաշտ գիւղի եւ շրջակայից գաղթականներ, որոնք*

կանուխէն եկած էին (§1583), եւ առհասարակ Դաշտեցի կը կոչուէին, բնակած էին Շամշապատ թաղը (ԴԱՎ. 340)։ Երեւանէ և չրջականներէն գաղթածներ կը գտնուէին Թաղթիխարաջայ և Բաղաթ թաղերը, իսկ առհասարակ Հայաստանի զանազան կողմերէն՝ Տիարպէքիրէ, Բաղէշէ, Մուշէ, Կարինէ, Երզնկայէ և անոնց չրջականներէն եկուածներ կը բնակէին, Շախչաբան և Թօրոսկան թաղերը (ԴԱՎ. 345)։ Ասոնց ամէնուն՝ Ջուղայեցւոց կազմած Նոր-Ջուղայի մէջ կեդրոնանալն է, որ տեղի ունեցաւ Շահաբաս Երկրորդի հրամանով եւ բռնի գործադրութեամբ։ Գործին առաջին ծագումը Շամշապատէն սկսաւ, որ աւելի գեղեցիկ և հանգիստ թաղն էր, և ուր կը կեդրոնանային պալատան նախկին պաշտօնեաներ և հին ներքինիներ, և կ'ուզէին Հայերը հեռացնել անոնց տեղերը գրաւելու համար (ԴԱՎ. 345)։ Պատեհ առիթ մը եղաւ անոնց ձեռքը Շահաբասի կողմէ տրուած հրամանը, որով Մահմետականներուն կ'արգիլուէր գինիի գործածութիւնը, սաստիկ պատիժներու, քիթ ու ականջ, ձեռք ու ոտք կտրելու, և մինչեւ իսկ մահապարտութեան պատիժներով (ԴԱՎ. 342)։ Ասով մէկտեղ արբեցութիւնը սովորական էր Պարսիկներու մէջ, մինչեւ իսկ թագաւորին զարմանք պատճառեց, որ Ասպահանէ Ղազբին էր քաշուած։ Ասոր ներքին պատճառը իմանալու համար Նաջաֆղուլի բէկ անուն «չէօօր և ճոյն» պալատականի մը պաշտօն տրուեցաւ Էհտիմալ-Դովլաթ եպարքոսէն՝ Ասպահան երթալ, և հետազօտութիւններ ընել։ Շամշապատի բնակիչ Պարսիկներ թելադրեցին արքունական գրապահ կամ դիւանապահ պաշտօնէին, և նա պատեհ առիթով զգացուց Նաջաֆղուլի պատուիրակին, թէ բուն պատճառը գինի խմելու արտօնեալ Հայերու հետ խառն բնակութիւնն է, վասնզի մէկուն ձեռքը գինի տեսնուած ատեն, «յորս ոչ Հայոց տանէ, և յորն ոչ Հայոց տուն տանէն»՝ կ'ըսէ, և կ'ազատի, և ուզողը Հայու մը տունը կը մտնէ ու կը խմէ, կամ կը գնէ և տունը կը տանի (ԴԱՎ. 244)։ Բաց աստի գետին ջուրն ալ, ուսկից Մահմետականներն ալ կը խմեն, չարունակ կը պղծուի, վասնզի Հայեր անոր մէջ կը լուան գինիի կարասները, և անոր մէջ կը վաթեն քաղցուէն աւելցած կնճիռը և օղիէն մնացած մրուրը (ԴԱՎ. 346)։ Նաջաֆղուլի գաղտնիքը գտած ըլլալու գոհունակութեամբ եպարքոսին հաղորդեց զայն, նա ալ թագաւորին առաջարկեց, և այսպէս տրուեցաւ 1655ին Դաշտեցիներուն համար արքունի հրամանը (ԴԱՎ. 351) Շամշապատէ ելլելու, և գետին միւս կողմը Նոր-Ջուղայ և Գաւառապատ թաղերը փոխադրուելու։ Հայեր թէպէտ ընդդիմացան, բայց վերջապէս «եթէ ի հրամանէ թագաւորէն, եթէ ի բռնաւորեն իշխանացն, եթէ ի հարստահարութենէ Մահմետականացն, անճար ծանցն», և Դաշտեցի Հայերուն համար նշանակուած թաղերը անցան (ԴԱՎ. 347)։

**ԱՍՊԱՀԱՆՑԻՔ ՏԵՂԱՓՈԽՈՒԱԾ**

**1725.** Շամշապատի Դաշտեցիներուն վրայ կատարուած առաջին հրամանը գոհացուցիչ արդիւնք տուած ըլլալով, միւս տարին 1656ին միեւնոյն հրամանը գործադրուեցաւ Երեւանցիներու վրայ (ԴԱՎ. 351), որոց նախ բարեկամօրէն յանձնարարուեցաւ, գիւղաւագ խօջայ Յակոբջանին ձեռքով, բայց «ոսկի և բերան ազգն Հայոց», կը գրէ Դավրիժեցին, «սկսան դժկամակ և դիմադարձ լինել», մինչեւ իսկ աղմուկով և աղաղակով թագաւորին դիմեցին, սակայն օգուտ չըրաւ, և թագաւորը «շէյխան հանդերձ զօրականօք» վրանին ղրկեց, «ամենին բռնութեամբ» հանելու համար։ Բայց երբ «յաճախեաց բեռն ի վերայ գլխոյն Հայոց, այն ատեն չեկեր և դժնդակութեան յենեանն բերելով», ժամանակ և փոխարէն գետին խնդրեցին, որոնք իրենց չնորհուեցան (ԴԱՎ. 319)։ Միեւնոյն ատեն Շախչաբանցիներն ալ ստիպուեցան տեղերնէն ելլալ, և փոխադրուիլ Ջուղայեցիներու քովը իրենց ցուցուած հողերուն վրայ, և տեղափոխութիւնը լրացաւ 1659ին (ԴԱՎ. 351), որով բուն Ասպահանի մէջէն Հայերը պարպուեցան, և Նոր-Ջուղան կատարեալ հայաքաղաքի ձեւ առաւ, և ստացուած արդիւնքը հետզհետէ հաճելի և սիրելի դարձաւ Հայերուն։ Զի անով ազատ'ցան չատ մը անտեղութիւններէ, որոնք խառն բնակութեան հետեւանք էին, և խառնակ կենակցութեան դիւրութիւն կը մատակարարէին։ Այս անտեղութեանց կարգէն էին չ::տերուն մանր-

*մութիւն չատցնելով քրիստոնէութենէ ուծանայն և կրօնափոխ ալ ըլլալը։ Մանաւանդ երիտասարդներ և երիտասարդուհիներ, փոխադարձաբար իրարու սիրահարուելով ուրացութեան կը յորդորուէին, որպէսզի ուստերք մահմետականաց քրիստոնեայ աղջիկները առնեն, կամ ուստերք քրիստոնէից մահմետականներու հետ ամուսնանան, և* [illegible] *կը յարէ պատմիչը։ Նիւթական դիւրութիւն ալ ունեցան Հայերը, զի քաղաքամիջի նեղ և անձուկ և* [illegible] *բնակութեան տեղ, ընդարձակ* [illegible] *և* [illegible] *հովանոց տուներ ունեցան պարտէզներէ շրջապատուած։ Վերջապէս խառն բնակութեան պատճառով, մահմետականներ* [illegible] *և* [illegible] *քրիստոնեայ դրացիները, մինչ նոր բնակութեանց մէջ այդ ձանձրոյթներէ ալ ազատ՝* [illegible] *խաղաղութեամբ կենակցելու սկսան։ Այս պատճառներով Հայերը մինչ առաջ դժուարէին, վերջէն* [illegible] *դառնալով սկսան* [illegible]*, զի խնամարկութեամբ Աստուծոյ կատարեցաւ այս գործս* (ԴԱՎ. 350)։

**1726**. *Յակոբի կաթողիկոսութեան սկիզբը նշանաւոր յաջողութիւն մը եղաւ զանգակատունին գործը, զոր Փիլիպպոս հիմնարկած էր* (§ 1707), *և որուն մինչև վերջ հակառակ էր եղեր Մահմատղուլի կուսակալը* (§ 1709), *չարունակ սպառնալով շինուածն ալ քակել։ Սակայն Աստուած* [illegible]*, կը գրէ պատմիչը։ Մահմատղուլի իւր գոռոզ բնաւորութեամբ անարգած էր և* [illegible] *Թագաւորին կողմէ եկող իշխանները, որոնք դարձած առեննին զինքն ամբաստանեցին և պաշտօնանկ ըրին զայն, և յաջորդ նշանակուեցաւ Նաջաֆղուլի խան, որ հաւանաբար վերև յիշատակուած* (§ 1724) *միևնոյն Նաջաֆղուլի բէկն է։ Այդ փոփոխութիւնը տեղի ունեցաւ Փիլիպպոսի մահուընէ ոչ շատ ետքը, և Յակոբ ալ նոր եկող կուսակալին մտերմութիւնը մշակելով,* [illegible] *Նորա, և ոսկին ու արծաթը չխնայելով կուսակալէն և անոր շուրջը գտնուող իշխաններէն, յաջողեցաւ 1657 յուլիսին, Փիլիպպոսի մահուընէ երկու տարի ետքը, զանգակատունը լրացնելու հրամանը ստանալ, և ամէն փոյթ և ջանք թափելով, տարիէ մը զայն բարձրացուց ու աւարտեց՝ զանազան քանդակներով զարդարեց։ Մէջը սեղան ալ կանգնելով անուանեց Սուրբ Հրեշտակապետ՝ խորհրդով Գաբրիէլեան հոգւոյն, և 1658'ին Խաչվերացին օրը, սեպտեմբեր 12'ին, զանգակատունին գագաթին խաչը օրհնեցին, և տնկեցին զխաչն, այսինքն է վար առին շինութեան ծառայող լաստակառոյց կազմածը, որ կը նշանակէ գործին աւարտումը։ Դավրիժեցին կը դնէ թէ զանգակատունին վրայ գրեալ թուականն* [illegible] *էն* (ԴԱՎ. 263), *սակայն Մխիթարեան կ'ըսէ թէ կաթողիկէին ներքին կողմը 1658 թուականը գրուած կը տեսնուի* (ՎԱՂ. 24)։

**1727**. *Ազգային կեանքին և մեծ աթոռներուն աղետալի անցուդարձերը պատմելու չանցած, յիշենք ներ Յակոբ կաթողիկոսի հայկական տպագրութեան համար ունեցած հոգածութիւնը։ Այդ կենսական գործը Միքայէլ կաթողիկոսի հովանաւորութեամբ և Աբգար Եւդոկիացիի ձեռքով ստացած առաջին ազգային շարժումէն ետքը* (§ 1557), *թէպէտ ընդհատ, բայց ոչ սպառած ընթացք մը ունեցաւ, բայց միշտ Իտալական քաղաքներու և առաւելապէս Վենետիկի մէջ։ Արևելքի մէջ առաջին փորձը Խաչատուր Կեսարացիինը եղաւ 1640'ին* (§ 1711), *սակայն արդիւնքը գոհացուցիչ չէր արհեստական տեսակէտէն։ Յովհաննէս Ջուղայեցին ալ ետ չէր եկած կատարելագործութիւն բերելու, և նոյն նպատակով 1637'ին Եւրոպա անցնող Յովհաննէս Անկիւրացին ալ իւր գործունէութիւնը Իտալիոյ մէջ ամփոփած էր, մինչ Յակոբ կաթողիկոս հետամուտ էր արհեստը ազգային կեդրոնին մէջ զարգացնել։ Այդ նպատակով, իւր կաթողիկոսութեան սկիզբը Եւրոպա ուղարկեց Մատթէոս Ծարեցի սարկաւագը, որ Վենետիկ հասաւ 1656'ին, բայց պարտաւորուեցաւ 14 ամիս այնտեղ դեգերիլ իզուր. անկէ Հռոմ անցաւ, հոն ալ 8 ամիս մնաց ապարդիւն կառավարական արգելքներու չկրնալով*

ԶԱՆԳԱԿԱՏԱՆ ՇԻՆՈՒԹԻՒՆԸ

ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

*յաղթել, և 1658'ին գնաց Հոլանտիոյ մայ-րաքաղաքը Ամստելտամ* (Amsteldam) *հին հնչմամբ, կամ Ամստերտամ* (Amsterdam) *նոր հնչմամբ։ Հայ տաւերու նոր կաղապար-ներ կը սկսի պատրաստել տալ, բայց շա-տեր չեն օգներ, և միայն Աւետիս Ղլըճենց Երեւանեցի վաճառականը դրամով և խոր-հրդով ձեռնտուութիւն կ'ընծայէ, և 1660'ին կը սկսին Յիսուս որդի մը տպագրել։ Բայց գործը չաւարտած 1661 յունուար 22'ին կը մեռնի Մատթէոս Ծարեցին* (ՏՊԱ. 98), *և Աւետիս կը շարունակէ և կը լրացնէ, և ուրիշ գիրքեր ալ կը հրատարակէ, ընկերակցութեամբ Կա-րապետ Անդրիանեցի վարդապետին, որ էջ-միածինէ ղրկուած էր Ծարեցիին մահուանէ ետքը։ Աւետիս իւր իսկ եղբայրը՝ Ուշիի Ս. Սարգիսը Նորոգող* (§ 1713) *Ոսկան Երեւա-նեցի վարդապետը խնդրած էր կաթողիկո-սէն գործին գլուխ կանգնելու համար, և Ոսկան իրմէ առաջ փութացուցած էր իւր աշակերտ Կարապետը, մինչև որ ինքն գա-նազան տեղեր հանդիպելով նպաստներ հա-ւաքէ և այնպէս երթայ* (ՏՊԱ. 102)։ *Այդ ամէն աշխատութեանց հովանաւորող և ոգե-ւորութիւն ներշնչողը միշտ Յակոբ կաթո-ղիկոսն էր, որուն գլխաւոր նպատակներէն մին ալ տպագրուած Աստուածաշունչ մը ունենալն էր՝ Սուրբ Գիրքը տարածելու համար։*

**1728.** *Յակոբի շինարարութեան ար-դիւնքներէն յիշած ենք վկայարաններուն նորոգութիւնները* (§1704),

ՇԻՆՈՒԹԻՒՆՔ ԵՒ ԿԱԼՈՒԱԾՔ

*Շամբուձորու Ս. Ստե-փանոսի* (ՁԱՄ. 24) *որ է Դարաշամբու Ս. Նախա-վկայի ամբողջական վերաշինութիւնը* (§ 1722), *և վերջէն զանգակատունին աւար-տումը* (§ 1726), *բայց շատ աւելի գործեր ալ լրացուց հետզհետէ, և առանձինն իւր հոգածութեան առարկայ րրաւ աթոռապատ-կան գիւղերուն ստացութիւնը ընդարձակել և ապահովել։ Կաթողիկոսութեան սկիզբ-ները Սպահան ալ գնաց, որպէսզի Շահա-բասէն առեալ հրաման վասն կաթողիկոսութեան իւրոյ, և մեծ յաջողութիւն գտաւ, և հա-մարձակ ալ քրիստոնէութեան խորհուրդ-ները բացատրեց շահին առջեւ։ Այս առթիւ արքունի հրովարտակով ապահովեց էջմիա-*
*ծին գիւղին տասանորդին վայելումը* (ՁԱՔ. Բ. 60—62), *և Շահաբասէ յոյժ սիրեցեալ ըլ-լալով, առաջին հրամանագրով հաստատել տուաւ աթոռին իրաւունքները* (ՁԱՄ. 24)։ *Յակոբի օրով վանքապատկան գիւղերուն աւելցան Ամիրի՝ Գեղարքունի գաւառին մէջ, Եայճի՝ Ծաղկունի գաւառը, Բոխենիս՝ Աներրդի հանդէպ, Ղարաղօյունլու՝ Արագածի վրայ, Մելիքի՝ Ապարան գաւառը, Օշական՝ Արա-գածի ոտքը, Նորագիւղ՝ Երեւանի մօտ* (ՎԱՂ. 23), *զոր Նոր գիւղ կը կոչէ Երեւա-նեցին* (ՁԱՄ. 24)։ *Իսկ Զաքարիա կը յիշէ Քասաղ, Թեղնեաց, Սանտոյ, Սեւաւեր, Բադուինճ, և Բիւրական գիւղերն ալ* (ՁԱՔ. Բ. 62)։ *Երկու տարբեր տեղերէ ալ ջուր հանելով և ընթացքը կանոնաւորելով, մէ-կը Նորգիւղի արտերը ոռոգելու, և միւսը Մայրաթոռին ներքին կիրառութեան յատ-կացուց, և նոյն ջուրերէ օգտուեցաւ ջրա-ղացներ և տնկեր ալ բանեցնելու։ Երեք տեղ ալ, Մոլլատուրան գիւղը, Դուի այգին և Մանկասար ագարակը, շինեաց չերեք ծո-վակս, այսինքն է մեծ ջրամբարներ, որք ոչ սակաւ առնէին շքեղութիւնս այգեաց և ար-տօրէից* (ՁԱՄ. 24)։ *Այսչափ ինչ Յակոբի բազ-մօգուտ ձեռնարկներու, և Մայրաթոռի ներքին գործերու վրայ գրելէն ետքը, անց-նինք քաղել այն ազնուալի անցուդարձերը, որոնց ասպարէզ դարձան Կոստանդնուպոլ-սոյ և Երուսաղէմի աթոռները։*

**1729.** *Երբոր Փիլիպպոս 1653'ին Կ-Պո-լիսէ էջմիածին դարձաւ* (§ 1709), *Յովհան-նէս Մուղնեցին Կ-Պոլ-*

ԵՐՈՒՍԱՂԷՄ ԵՒ Կ-ՊՈԼԻՍ

*սոյ, և Աստուածատուր Տարօնեցին Երուսաղէմի պատրիարքներ էին, եր-կու տեղերն ալ համեմատաբար խաղաղու-թիւն էր, և Բեթղեհէմի կալուածին և Ս. Փրկիչի վանքին համար յարուցուած խըն-դիրները Հայերուն նպաստաւոր կերպով վերջացած էին* (ԱՍՏ. Ա. 342)։ *Կոստանդ-նուպոլսոյ մէջ պատրիարքական աթոռին շուրջը յուզուող և դայն իրարու ձեռքէ խլելու խնդիրները լռած էին, ցորչափ կեն-դանի էր Փիլիպպոս, որ Մուղնեցին պատ-րիարքութեան անցուցած էր. բայց հազիւ թէ Փիլիպպոսի մահը լսուեցաւ՝ ձգտում-ներ զօրացան, գլխաւորապէս Եղիազար*

Այնթապցիի կողմէն, որուն կ՚օգնէր Մարտիրոս վարդապետ Կաֆացի իւր ձեռնասունն ու պաշտպանեալը։ Նուստով կազմուեցաւ նշանաւոր ազգայիններու խմբակ մը, որոց հետ կը գտնուէր Ռուհիջան Վանեցի (§ 1697), և Մուղնեցին վար առնուեցաւ, սակայն յաջորդ չդրուեցաւ, վասնզի իշխանաւորներ իրենց ձեռնտու գտան տեղակալութեան ձեւը, զոր անգամ մըն ալ փորձած էին 1649'ին, և իրենց վրայ պահեցին պատրիարքական իշխանութիւնը, Կաֆացին գործածելով իբր փոխանորդ, որ իրենց անունով եկեղեցական գործերը կատարէ։ Այդ փոփոխութիւնները տեղի ունեցան 1655'ին (ՁԱՄ. Գ. 664), Փիլիպպոսի մահուան տարին չլրացած։ Անկէ առաջ Երուսաղէմի մէջ վախճանած էր Գաբրիէլ Եթովպացի վարդապետ, Եթովպացւոց կամ Հաբէշաց տեսուչը, որ յաջորդ չունեցաւ, և Եթովպացի կրօնաւորներն իրենց երկիրը երթալու առիթով, սրբավայրերն և կալուածներն Հայոց պատրիարքութեան յանձնեցին, որոց հետեւորդներն էին արդէն։ Բայց Յոյներ, որ Ռուզատիկի տարիէն իվեր սաստիկ հակառակութիւն կը վարէին Հայոց դէմ (§ 1671), պատեհ գտան Հաբէշներու մասերը յափշտակել, իսկ Հայերուն հնար չեղաւ ոչ դատարանով և ոչ Աղեքսանդրիոյ Ղփտի պատրիարքին վկայութեամբ իրաւունքնին պաշտպանել, և Աստուածատուր պատրիարք պարտաւորուեցաւ անձամբ Կ-Պոլիս երթալ, ուր հասաւ 1656'ին սկիզբները, տեղակալներու իշխանութեան միջոցին (ԱՍՏ. Ա. 344)։ Միեւնոյն ատեն Կ-Պոլիս դարձած էր Թովմաս Բերիացին, որ 1644'ին անուանական պատրիարքութենէ մը ետքը՝ Հռոմ փախած էր (§ 1696), և այժմ ետ կը դառնար ներքին չփոթութիւններէ օգտուելով, և դեսպանատուներու և անոնց ծառայող Հայերու ձեռքով պատրիարքութիւնը ձեռք ձգելու համար։ Օսմանեան պետութեան վիճակն ալ ոչ նուազ խառնակ էր նոյն միջոցին, զի Ենիչէրի և Սիփահի գունդեր ապստամբութիւն յարուցած էին իրենց ռոճիկներուն պատճառով, և եպարքոսներ և նախարարներ զոհ կ՚երթային իրենց պահանջումներուն։ Հազիւ 1656 մարտ 8ին քիչ մը հանդարտութիւն կրցած էր պատրաստել մեծ եպարքոս Զավուշ փաշա, այլ ամիսէ մը այն ալ կը մեռնէր, և իրեն կը յաջորդէր Պօյնուէյրի Մէհէմմէտ փաշա, և եպարքոսութեան տեղակալ Եուսուֆ փաշա՝ ապստամբներէն չորս հոգի ձեռք անցընելով կը գլխատէր մայիս 8'ին, և անով ապստամբութիւնը կ՚ընկճուէր (ԺՈՒ. 261)։

**1730.** Աստուածատուր պատրիարք, Կ-Պոլսոյ պատրիարքարանի ձեռնտուութենէ յուսաբեկ, Եղիազար Այնթապցիին հետ համաձայնութեան կը մտնէր, վստահելով անոր վարչական և դրամական կարողութեանց վրայ, և կը խոստանար յաջողած ատեններն Երուսաղէմի գործերը անոր յանձնել փոխանորդի անունով։ Իրօք ալ ուղղակի նոր եպարքոս Պօյնուէյրիին կը դիմէին Ռուհիջանի միջնորդութեամբ, և կը ստանային Հաբէշներու սեփականութիւնները Հայոց յանձնելու հրովարտակը։ Եղիազար զայն առած կը փութար Երուսաղէմ, և կը տիրանար խնդիրի ներքեւ եղող կալուածներուն՝ և կը կարգադրէր Հայոց իրաւունքները Բեթղեհէմի տաճարին վրայ (ԱՍՏ. Ա. 349)։ Այդ պարագային կը պատմուի Եղիազարի Հայոց վանքին մէջ պահուած 200,000 դահեկանի արժողութեամբ ոսկի և արծաթ դրամներ գտնելը, զորս Գրիգոր Պարոնտէր ծածկած է եղեր, և ծածկագրութեամբ գեղջէն ծոծ և ողջոյն ծոծ անուններով տետրներու մէջ նշանակած։ Ինչ ալ ըլլան գիւտին պարագաները, Եղիազար արդէն դրամական կարողութեան տէր, անով անգամ մըն ալ զօրացաւ, և գումարները մասամբ գործածել սկսաւ, և մասամբ գաղտնի տեղեր պահեց (ՁԱՄ. Գ. 666)։ Բայց յաջողութիւնը շատ չտեւեց, զի 1656 սեպտեմբեր 5'ին Պօյնուէյրին ալ փոխուեցաւ, և տեղը անցաւ Քէօբրիւլիւ Մէհմէտ փաշա, լիազօր իշխանութեան պայմանով, և անկէ օգտուեցան Յոյներ՝ նոր հրովարտակ մը ընդունել իրենց նպաստաւոր, Հաբէշաց սեփականութիւնները գրաւելու, և Եղիազարը իբր յանցապարտ ձերբակալելու։ Աստուածատուրի դիմումներ արդիւնք չունեցան, ընդհակառակն Յոյներ նոր ամբաստանութիւններ բարդեցին

Ս. ՅԱԿՈԲԱՅ ԲԱՆԱԼԻՆԵՐԸ

*Եղիազարի և ընդհանրապէս Հայոց վրայ, և Ս. Յակոբն ալ գրաւելու հրավարտակ առաւ ցան։ Եղիազար պարտաւորուեցաւ թաքչիլ, և Աստուածատուր յուսակտուր Երուսաղէմ դարձաւ այն տեղ աշխատելու համար։ Երկուքը մէկտեղ չահեցան Երուսաղէմի կուսակալ Հասան և Գազայի կուսակալ Հիւսէյին փաշաները, որոնք անմիջական գործադրութիւնը յապաղեցին։ Անոնց ձեռքով կրցան շահիլ Դամասկոսի մեծ կողմնակալն ալ, Թիյարօղլու կոչուած, որ առաջ Եղիազարը բանտարկած էր, բայց ապա թողուց, անոր ձեռքէն առնելով Ս. Յակոբայ մայրավանքին բանալիները, զորս իր մօտ իբր աւանդ պահեց, և վանքին դուռներն ալ կնքեց, բայց միանգամայն Հայոց նպաստաւոր գիր ալ ղրկեց Քէօփրիւլիին։ Անկէ առաջ Աստուածատուր և Եղիազար ճանպայ հանած էին Դաւիթ Բերիացի եպիսկոպոսը, և անոր ձեռքով բաւական գումար ալ յղած Ռուհիջանի, որ Երուսաղէմի փոխանորդութիւնն էր ստանձնած, պատշաճը հոգալու։ Բայց թէ Դաւիթի ու Ռուհիջանի դիմումը, և թէ Թիյարօղլուի գիրը օգուտ չունեցան, և Քէօփրիւլիւն կրկնեց իւր հրամանը Ս. Յակոբը Յոյներուն յանձնելու, և Եղիազարը իբր գլխապարտ Կ-Պոլիս յղելու։ Այս պատճառով Հայեր իրենց վանքէն հեռացուած թափառական կը մնային Երուսաղէմի մէջ, իսկ Եղիազար ձեռք չիյնալու համար՝ Դամասկոսի և Գազայի և Եգիպտոսի կողմերը կը դեգերէր, տեղ մը դադար չունելով։ Այսպէս անցաւ ձմեռը, և նոր տարւոյ 1657ի զատկին, որ մարտ 29ին կը հանդիպէր, Թիյարօղլուն առժամապէս ներեց Հայերուն, զատիկնին Ս. Յակոբի մէջ ընել, նորէն բանալիները ետ առնելու և դուռերը կնքելու պայմանով։ Այս պատճառով Քէօփրիւլին աւելի զայրացաւ Թիյարօղլուի դէմ, և կրկնեց իւր միւսի հրամանները, որով չփոթ կացութիւնը կը շարունակէր Երուսաղէմի մէջ։*

**1731.** *Իսկ Կ-Պոլսոյ մէջ տեղակալութեան ձեռք նորանոր անկարգութեանց դուռ կը բանար։ Պատրիարք չգտնուելուն վեց թաղերուն կամ վեց մեծ եկեղեցիներուն աւագները ուզածնուն պէս կը գործէին և իրարու հետ կը կռուէին, և Կաֆացին որ իբր պարզ փոխանորդ կը գործէր, ոյժ չունէր զանոնք զսպել։ Առիթէն ջանաց օգտուիլ Ղազար Սեբաստացի արեղայ մը, որ առաջ Կ-Պոլիս էր ապրած, ետքէն Էջմիածին գացած, և չկրնալով Փիլիպպոսէ և Յակոբէ վարդապետութիւն առնել, Կ-Պոլիս էր դարձած, և Կաֆացիին յարելով, վերջապէս անկէ վարդապետութեան աստիճան առած էր։ Երկուքը մէկտեղ Էջմիածինի վրայ չարախօսելու կը հետևէին, անուղղակի կերպով նախորդ պատրիարք Մուղնեցին վաւերացնելու համար, որ պատրիարքութենէ ելնելէ ետքը (§ 1729) Էջմիածին էր դարձած։ Կ-Պոլսոյ մէջ Ս. Նիկողայոսի և Ս. Աստուածածինի թաղերը՝ Կաֆացիին և Ղազարին կեդրոնն էին դարձած, ուր եկեղեցիներու մէջ իրենց չարաշահութիւնները կը խօսէին, մինչև որ ժողովուրդներ զայրացան, աւելի Ղազարի վրայ, և զայն ձեռք ձգել ուզեցին։ Իսկ երբ Ղազար պահուըտեցաւ, իբրև խռովարար ամբաստանեցին, Ս. Նիկողայոսի քահանաներուն և թաղեցիներուն սպառնացան, բայց առով ալ չյաջողեցան։ Այդ միջոցին Կ-Պոլիս կը գտնուէր Կիլիկիոյ կաթողիկոս Թորոս, որ 1653ին յաջորդած էր Ներսէս Սեբաստացիին, այն որ Փիլիպպոսի հետ Երուսաղէմի խաղաղութիւնը կնքած էր (§ 1690)։ Թորոս ալ Սեբաստացի էր ինչպէս կը վկայէ Քէօմիւրճեան, գրելով Թորոս Սեբաստացի կաթողիկոս Կիլիկիոյ տան (ՉէԼ. 51), թէպէտ ուրիշներ Սսեցի կը գրեն (09 ՕՐՍ. 283)։ Սա երկարակեաց չէ եղած, և 1657 ապրիլ 29ին վախճանած է Կ-Պոլիս եղած միջոցին, այլ որոշ չենք գտներ անոր մահուան պարագաները։ Միայն կը պատմուի թէ Մարտիրոս Կաֆացին, որ 1657 փետրուար 8ին սկսող մեծ պահքին սկիզբը Երուսաղէմ էր գացած, ճիշդ ապրիլ 29ին Կ-Պոլիս դարձաւ, և Խաչատուր Սեբաստացիին հետ Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ Թորոսի յուղարկաւորութեան գտնուեցաւ, որ թաղուեցաւ Պալըքլըի գերեզմանոցը, ուր կը տեսնուի տակաւին իւր գերեզմանը նորոգեալ տապանագրով։ Խաչատուր Սեբաստացին առիթէն կ՚օգտուի Թորոսի յաջորդութիւնը ձեռք ձգել, Կ-Պոլսոյ*

Կ-ՊՈԼԻՍ ԵՒ ՍԻՍ

*եկեղեցիներէն իւրաքանչիւրին հարիւրական դուրուշ նուիրելով, և հրովարտակն ստանալով կ'երթայ Սիս, և կ'օծուի* 1657 *յունիս* 17'*ին: Այս առթիւ Ղազար ալ Կ-Պոլիսէ կը հեռանայ Խաչատուրին յարելով, և անշուշտ անոր կաթողիկոսութեան օգնած ըլլալուն համար անմիջապէս եպիսկոպոս ալ կը ձեռնադրուի Տիվրիկի վիճակին վրայ* (ՉԱՄ. Գ. 669), *թէպէտեւ քիչ ետքը նորէն Կ-Պոլիս կու գար, նոր ոտնձգութեանց սկսելու՝ աւելի զօրութեամբ: Կաֆացին ալ իւր քաղաքն էր գացած այն կողմէն միջնորդութիւն ճարելու յոյսով:*

**Ս. ՅԱԿՈԲ ՅՈՅՆԵՐՈՒՆ**

**1732**. *Հայերուն այժմ նուազած ըլլալուն Թիպարօղլուն անոնց կողմէ չահի ակընկալութիւնն ալ քիչցած տեսաւ, մանաւանդ զատկին առթիւ ըրած թոյլտուութեամբը Քէօփրիւլին զայրացուցած ըլլալը բուժել ալ ուզելով, Հոգեգալստեան օրը* 1657 *մայիս* 17'*ին, Ս. Յակոբի բանալիները յանձնեց Յոյներուն, որոնք անարգել գրաւեցին Հայոց վանքը, սպասներուն և ինչքերուն տիրացան, մեծ դուռը Հայոց դէմ գոցեցին, և և կողմնակի անցքէ մը ներեցին մտնել. անարգ թաղի մը մէջ տեղ ցուցուցին մնալ ուզողներուն, և այլեւս չափ չկար Հայոց դէմ ըրած նախատինքներնուն և ցուցած յախորտանքներնուն* (ՉԱՄ. Գ. 670): *Բայց երբ լրացած կ'երեւէր Յոյներու յաղթանակը, յանկարծական պատահար մը կերպարանափոխ ըրաւ կացութիւնը: Մեծ դաւաճանութիւն մը յայտնուեցաւ Կ-Պոլսոյ մէջ, որուն պատճառով* 4000 *հոգի սպաննուեցան և դիակնին ծով նետուեցաւ: Յոյներու Պարթենիոս Գ պատրիարքին գիրերն ալ ձեռք ինկան, և յանցապարտ դատուելով Փարմաքքաբուն կախուեցաւ իւր պաշտօնական տարազով, և դիակը ծով նետուեցաւ* (ՓՈԽ. 263): *Ուրիշ Յոյներ ալ փնտռուեցան և ցրուեցան, և նոյն իսկ Երուսաղէմի Յոյն պատրիարքն ալ պարտաւորուեցաւ խոյս տալ և թաքչիլ:*

**1733**, *Այդ արկածէն քիչ առաջ, Քէօփրիւլին միտք ունէր Հայերուն գործերը կարգադրել, ուստի ստիպած էր պատրիարք մը դնել, և տեղակալները բանտարկել տուած: Ասոնք* 10,000 *դահեկանի տուգանքով ազատած էին, և տարեկան* 100,000 *փող պատրիարքարանի տուրքը* 140,000 *հազարի բարձրացնելով ընտրութիւնը յետաձգել տուած կը կարծէին: Բայց Թովմաս Բերիացին մեծ եպարքոսին մօտ երթալով Ադրիանուպոլիս, և պատրիարքարանի տուրքը* 400,000 *փողի բարձրացնելով, պատրիարքութեան հրովարտակ կը ստանար, և առջեւէն իբր իւր փոխանորդներ կը ղրկէր Նիկողայոս Թուլկուրանցի ու Դաւիթ Բերիացի վարդապետները, և Աստուածատուր Վանեցի երէցը: Անոնց ետեւէն ինքն ալ կը հասնէր Կ-Պոլիս* 1657 *մայիս* 13'*ին, եպարքոսութեան տեղակալ Սինան փաշայի հետ: Թուականները բաղդատելով կը տեսնենք, որ այդ գործը տեղի կ'ունենար Ս. Յակոբի գրաւումին հետ միեւնոյն օրերը* (§1730): *Յիշեալ Աստուածատուր երէցը նոյն ինքն Թըլթըլ մականուանեալն է, այսինքն է Թոթովախօս, յախուռն և ձեռներէց քահանայ մը, որուն անունով կուսակցութիւնն ալ Թըլթըլեան կոչուեցաւ, և Թովմաս Բերիացիին կողմնակից ըլլալուն, լատինասիրութեան և օտարամոլութեան կերպարանը առաւ վրան, թէպէտ իսկապէս պարզ կուսակցականութիւնն էր պառակտումներուն շարժառիթը: Անհնարին չփոթութեանց միջոց մը կը ներկայէ* 1657 *տարւոյ երկրորդ կէսը: Վերագոյնդ յիշեցինք դաւաճանութեան մը յայտնուիլը և Յոյն պատրիարքին մահապարտութիւնը և Յոյներու լքումը: Թերեւս այդ պատճառով Հայերուն նպաստաւոր վիճակ մը ստեղծուէր, բայց Թովմասի հանած փորձանքը ներքին պառակտումը աճեցուցած էր: Տեղակալներու խումբը* 24 *հոգիներու աճած էր, իրեն հովանաւոր ունենալով Ռուհիջանը, որոնցմէ* 15'*ին անունները յիշուած են, և են, Խոջայ Տավութ, Սէֆէր Խանճի, Շէհրի Արալիճի, Պէկլէր Էքմէքճի, Գրիգոր Քէրէստէճի, Յարութիւն Եաղճի, Սիմոն Գօտուր, Յարութիւն Պալի, Հաճի Կոստիկ, Ֆէրհատ օղլու, Մկրտիչ, Մուրատ, Էխթիկ, և երկու երէցներ՝ Սիմէոն և Քիւրքճիւ օղլու: Թերեւս Յոյներու անկումով Հայերը չահէին, գլխաւորապէս Ս. Յակոբի խնդիրին մէջ, սակայն միւս կողմէն պետական ապստամ-*

**ՏԵՂԱԿԱԼՆԵՐ ԵՒ ԹՈՎՄԱՍ**

*բութիւն մը կազմած էին Ասիակողման* 18 *կուսակալներ, գլուխնին ունենալով Ապազա Հասան փաշան, և յայտնապէս Քէօփրիւլիին անկումը պահանջելով* (ԺՈԽ. 265)։ *Ապստամբներէն մէկն էր Թիյարօղլուն, և Եղիազար Այնթապցին ալ անոր մօտ կը գտնուէր, Ս. Յակոբի վանքը պաշտպանելու համար, որուն Թիյարօղլուն կը խոստանար՝ Քէօփրիւլին տապալել, ետքը գործը կարգադրել։ Այնթապցին արդէն Քէօփրիւլիէն հալածուած* (§ 1729), *կրկին աւելի դարձած էր Թիյարօղլուին ապաւինած ըլլալովը, որով թէ Հայերուն գործերը, և թէ մասնաւորապէս Ս. Յակոբի գործը, պաշտպանութիւն չէին գտներ կառավարութեան առջեւ։ Ուսհիջան և տեղակալներէն ոմանք Ադրիանուպոլիս դիմեցին Թովմասի պատրիարքութեան դէմ բողոքելու, բայց* [illegible] *վռնտուեցան, և Թովմաս ետեւնէն երթալով իր պաշտօնին համար նոր հաստատութիւն ստացաւ, և այնպէս Կ-Պոլիս դարձաւ, բայց ազգը չէր ուզեր զայն ճանչնալ, և ոչ ալ հրամանները կ'ընդունէր։ Իսկ Թովմաս ալ Գումքափուի պատրիարքարանն իսկ մտնել չէր համարձակեր, և առանձնացեալ կ'ապրէր Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյն ժամատունը, շրջապատուած Պօսթանճի գունդէն պահակներով,* 20 *քսակի վարձքով* (ՁԱՄ. Գ. 672)։ *Այս կացութեան մէջ կ'անցնէին* 1657 *տարւոյ վերջին, և* 1658 *տարւոյ առաջին ամիսները։*

**1734**. *Հայերուն համար մեծ փորձանք մըն էր Ս. Յակոբի Յոյներէն գրաւուիլը, բայց կարծես թէ այն կը մոռցուէր Թովմաս Բերիացիին բռնակալ պատրիարքութեան հանդէպ,*

**ԹՈՎՄԱՍԻ ՎԱԽՃԱՆԸ**

*որ ազգին կամքին հակառակ կաշառքի զօրութեամբ և պետական բռնութեամբ իշխանութիւնը ձեռք անցուցած, կեղեքմանց և անիրաւութեանց կը ձեռնարկէր, յանձնառու եղած գումարները ճարելու համար։ Մասնաւոր պարագայ մը տժգոհութիւնը կ'աւելցնէր, զի Թովմաս ձեռք ձգած հրովարտակին մէջ Երուսաղէմն ալ իրր իրեն ենթարկեալ անցընել տուած էր։ Տեսնելով որ Թովմաս կաշառքի ոյժով պաշտպանութիւն կը գտնէ կառավարութեան մէջ, հակառակորդները ստիպուեցան ուրիշ զէնքով զայն տապալել, և յօգուտ գործածելով Թովմասի տասը տարիներ Հռոմ մնալը, կատարելապէս Ֆրէնկներու հետ համաձայնիլը, և անոնց տարազն ու կենցաղն ալ ընդունած ըլլալը, զայն կասկածելի ներկայեցին կառավարութեան աչքին, և վկաներ ալ ներկայացուցին Թովմասի Հռոմի մէջ ունեցած ընթացքը հաստատելու։ Մինան փաշա եպարքոսութեան տեղակալ՝ դատական քննութեան նստաւ, և Թովմասը պարտաւոր գտնելով, բանտարկեց զայն Գանըրգույու կոչուած, մահապարտներու արգելարանը, իր փոքրաւոր Միլիտոն աբեղային հետ,* 1658 *յուլիս* 3'*ին* (ՁԱՄ. Գ. 673)։ *Սակայն ազգայիններ հետամուտ էին, որ Թովմաս բոլորովին իսկ մէջտեղէ վերնար հեռաւոր աքսորով կամ որեւէ կերպով, զի գիտէին թէ անհնար չէր կաշառքի զօրութեամբ բանտէն ալ իշխանութեան դառնալ։ Ուստի նորէն պէտք եղած ճիգերը շարունակեցին, և վեց թաղերու, այսինքն Գումգաբու, Սամաթիա, Պալաթ, Ղալաթիա, Հիսարտիպի և Ջինիլիհամամ թաղերու եկեղեցականներն ու իշխանները, այս անգամ միաձայնութեամբ, մուրհակ ալ կնքեցին ըլլալիք ծախքերը վճարելու, Թովմայէ պահակներուն խոստացուած վարձքը առաւելօքը փոխարինելու, և պետական պաշտօնեաներու պէտք եղած հատուցումները ընելու։ Գործին ոյժ տալու համար, իրենց կողմը շահեցան նաեւ Աստուածատուր պատրիարքը, որ Ս. Յակոբին Յոյներուն յանձնուելէն ետքը, տեղւոյն վրայ յաջողութիւն չգտնելով մայրաքաղաք էր եկած, Ս. Յակոբի սեփականութեան համար պէտք եղած հրովարտակն կառավարութենէն ստանալու համար։ Աստուածատուր պատրիարք ուշնուրաւը Երուսաղէմի տուած, կ'ուզէր Կ-Պոլսոյ աթոռին խնդիրներուն չխառնուիլ. նոյն միտքով գրած էր Այնթապցին ալ Թիյարօղլուի բանակէն, թէ գլխաւոր խնդիրը Ս. Յակոբն է, և ոչ պատրիարքի անձը։ Սակայն Կ-Պոլսոյ հասարակութեան աչքին Երուսաղէմ եւս կը մնար, և բոլոր մտադրութիւնին գրաւուած էր Թովմայի բռնակալ և կաշառադին պատրիարքութեամբը։ Այս*

պատճառով Այնթապցիին նամակը նկատի չառին, և Աստուածատուրը համոզեցին թէ Երուսաղէմի գործը յաջողութիւն չկրնար գտնել ցորչափ Թովմաս կը մնայ, և այսպէսով անկէ ալ Թովմայի դէմ դատապարտութեան և նզովից գիր առին, և կրկին զօրացած՝ ամբաստանութիւնները սաստկացուցին. այնչափ որ Սինան փաշա, եպարքոսութեան տեղակալը, Թովմայի մահապարտութեան հաւանեցաւ, առանց գործադրութիւնը հրապարակաւ կատարելու։ Ըստ այսմ գեղատուութեամբ մեռաւ Թովմաս բանտին մէջ, իբր թէ խ-ր-վէ մեռած ըլլար, և 1658 օգոստոս 1 կիրակի առտուն դիակը բանտին դրան առջև նետուեցաւ ի ճաղանս, ըստ սովորութեան. և երկու օր այսպէս մնալէ ետքը, օգոստոս 3'ին երեքշաբթի օր ծով նետուեցաւ Ոսկեղջիւրի կողմը։ Որչափ ալ տգեղ ըլլայ Թովմայի անձին վրայ կատարուած աղետալի վրէժխնդրութիւնը, ալ աւելի տգեղ պէտք է դատուի Թովմայի եպերելի փառասիրութիւնը, որ նենգութեամբ և կաշառքով հանրութեան կամքին հակառակ աշխատեցաւ պատրիարքութեան տիրանալ, և բռնութեամբ զայն պահել։ Եթէ փորձանքի հանդիպեցաւ, գրգռութիւնը իւր կողմէն տրուեցաւ։ Անոնք որ Թովմայի նախընթացաբար Կալանոսի հետեւած ըլլալէն (§ 1693) և տասը տարի Հռոմ ապրելէն, բոլոր այդ անցուդարձը Թովմայի հռոմէական ըլլալուն կը վերագրեն, և ազգայիններուն ըրածը հռոմէականութեան դէմ հալածանք մը կը ցուցնեն, պէտք է դիտեն, որ հռոմէականութիւնը աւելի անարգուած է Թովմայի վատ և շահասէր և փառամոլ ընթացքովը, քան իրեն ընդդիմադիրներուն հակառակութեամբը։ Միւս կողմէն ալ պէտք է համոզուին, թէ Հայութիւնը լատինասէր և հռոմէական չէ եղեր, ինչպէս կը սիրեն կարծեցնել։

ՊԱՐՏՔԵՐՈՒ ԽՆԴԻՐՆԵՐ

**1735.** Թովմայի պատրիարքութիւնը, թէպէտ իբր 15 ամիս տեւողութիւն ունեցած էր, բայց իրապէս անուանական մնացած էր, գրեթէ նման իւր առաջին պատրիարքութեան (§ 1696), վասնզի միեւնոյն միջոցը պատրիարքանը տեղակալներուն ձեռքն էր, թէպէտ յայտնի չէ թէ ով եղած էր իրենց կողմէն եկեղեցական փոխանորդը Կաֆացիին մեկնելէն ետքը (§1730)։ Երբոր Թովմայի մեռնելով պատրիարքի անուն կրողն ալ պակսեցաւ, տեղակալներ աւելի համարձակութեամբ գործերնին սկսան շարունակել, օգտուելով դարձեալ Կաֆացիին գործակցութենէն, որ նոյն միջոցին Կաֆայէ Կ-Պոլիս կը գտնար։ Անոր յորդորներով նորէն ձեռք առնուեցաւ Ս. Յակոբի սեփականութեան խնդիրը։ Այդ նպատակով Կաֆայեցին ընկերներով Քէօփրիւլիին հետ տեսակցելու գնաց, երբ նա ալ Մաճառներու պատերազմէն կը դառնար. բայց խիստ ու զայրացկոտ ընդունելութեան հանդիպելով, դացողները հազիւ կրցան ազատօրէն ետ դառնալ։ Թըլթըլեանք այդ պարագայէն քաջալերուելով նոյն ինքն Թըլթըլ երէցին գլխաւորութեամբ Քէօփրիւլիին տեսակցութեան գացին նոյեմբեր 14'ին, իրենց հակառակորդները ամբաստանելով, Թովմայի մահը մէջ տեղ դնելով, և այդ երեսէ եղած ծախքերուն համար իրենց նեղութիւնը աւելցնելով։ Քէօփրիւլին ասոնք ալ ետ դարձուց, Կ-Պոլիս հասնելէն ետքը գործը նայելու խոստումով, և ահա երրորդ պատգամաւորութիւն մը կու գայ Ռուհիջանի գլխաւորութեամբ, և տեղակալներէն եօթը հոգիներու ընկերակցութեամբ, որոնք Քէօփրիւլիին կը հանդիպին Չէքմէճէ կոչուած աւանը, բայց կը ձերբակալուին, և Կ-Պոլիս բերուելով կը բանտարկուին։ Թըլթըլեանք քաջալերուած՝ ամբաստանութիւնները կ'ընդարձակեն և կը ծանրացնեն, բոլոր տեղակալներու համար ձերբակալութեան հրաման կ'ելլէ, նոյն ինքն եպարքոսութեան տեղակալը կ'ամբաստանուի և կը յանդիմանուի, բայց վերջապէս կը յաղթէ նորէն շահեցողական մեծ միջոցը, որ է արծաթը, և ամէնքը կ'արձակուին, և այս անգամ Թըլթըլեանք կը սկսին վախնալ որ չվտանգուին։ Երկու կողմերուն մէջ ծանր վէճեր կը յուզուին, Թովմայի դէմ գործողութեանց առթիւ եղած ծախքերուն և խոստացուած գումարներուն վճարման համար, որոնք հօբէ-րառոր ֆառկոց գումարներ կը կազմէին, և նախընթաց պայմանադրութեան համեմատ հաւասարապէս վեց թաղերու վրայ կը ծանրանային (§

*1733)։ Այլ այժմ Թլթլեանք կը խուսափէին և գլխաւորապէս Ս. Սարգիսի և Զինլինհամամի թաղեցիները, որոց մեծամասնութիւնը Թլթլեանց կողմէն էր։ Այս կերպով մէկ կողմէն ներքին վէճեր կը յուզուէին, և միւս կողմէն բանի հանգանակութիւններ կը շարունակուէին, զի եպարքոսական հրամանը վճարումը անխտիր ամէնուն վրայ ծանրացուցած էր (ՉԱՄ. Գ. 678)։ Իսկ Երուսաղէմի գործը նորէն մոռացութեան տրուած էր, կառավարութիւնն ալ Հայերուն գործին շատ մտադիր չէր, զի Սախտկողման ապստամբները հետզհետէ մայրաքաղաքին կը մօտենային (§1731)։ Մուրթէզա փաշա անոնց դէմ ղրկուեցաւ, բայց յաղթուեցաւ 1658 դեկտեմբեր 11'ին Ըլկընի ճակատամարտին մէջ։ Նա չյուսահատեցաւ, և նենգութեան դիմեց, սուտ հրատարակութիւններով ապստամբներուն մէկ մասը շահեցաւ, հրամատարնին Ապազա Հասանը մօտը բերել տուաւ, և սիրալիր ընդունելութենէ և մեծահաց կոչունքէ ետքը, զայն սպաննել և բոլոր հետեւորդները կոտորել տուաւ 1659 փետրուար 17'ին։ Այսպէս ընկճեցաւ ապստամբական շարժումը (ԺՈՒ. 265), և այդ առթիւ ձերբակալուեցաւ ու գլխատուեցաւ Թիյարծօղլուն ալ (ԱՍՏ. Ա. 362), Երուսաղէմի բարեկամ կուսակալը (§1733)։*

**1736.** *Եղիազար Այնթապցին, որ տարիէ իվեր Թիյարօղլուի ձեռքին ներքեւ ապստամբներու բանակին հետ էր, քանիցս մայրաքաղաքի գլխաւորներուն գիրեր և գումարներ հասուցած էր Ս. Յակոբի խնդիրին համար, առանց արդիւնք մը տեսնելու։ Ապստամբաց հետ գտնուելուն համար կառավարութենէ վախնալով, վարանոտ վիճակ մը ունէր. բայց վերջապէս որոշեց խոյս տալ Թիյարօղլուի քովէն, և որոշ գեր մըն ալ չստանձնելով և հրապարակ չելլելով, անծանօթ բնակիլ Կ-Պոլսոյ մօտերը, իբրեւ նախածանօթ Մէհմէտ աղայի մը պարտէզին մէջ։ Եղիազար այդպէս ապրեցաւ 1658 նոյեմբերէն մինչեւ 1659 փետրուար, և միայն Կաֆացին և քիչեր գիտէին իրողութիւնը և լսելեայն կ'աշխատէին, թէ՛ Ս. Յակոբի վանքին, և թէ Եղիազարի ապահովութեան համար։ Բայց վերջապէս Թլթլեանք լուր առին, և Շէկ Գասպար մը կառավարութեան իմացուց, խնդրակներ ելան, և Եղիազար ձերբակալուած մեծ եպարքոսին առջևը հանուեցաւ, որ շատոնց եռեւէ էր զայն ձեռք ձգել և դատապարտել։ Եղիազար ճարտար պատասխաններով ջանաց չիջուցանել Քէօփրիւլիին զայրոյթը. որ թէպէտ զգածուեցաւ, բայց չհանդարտեցաւ, և միայն հրամայեց շղթայակապ բանտարկել Եէնիչէրիներուն պահականոցին մէջ։ Զինապատ և ցրտաշունչ գիշեր մըն էր, 1659 փետրուար 18'ին, երբ Եղիազար բանտ առաջնորդուեցաւ Մեծպահոց առաջին ուրբաթին։ Ոչ ոք համարձակեցաւ անոր մօտենալ, միայն Երեմիա Քէօմիւրճեան, պահապանները հաճեցնելով մօտը գնաց. Ելից և լցոյց, զի մօտալուտ մահապարտութեան նշան էր այդ ընթացքը։ Եղիազար անոր յանձնեց իւր կնիքները և վրան եղող 500 ոսկւոյ ծրարը, որ Ռուհիջանին յանձնէ, իբրեւ Երուսաղէմին գործակալի կամ փոխանորդի։ Օրեր անցան և մահապարտութեան կասկածը չճշմարտուեցաւ, մանաւանդ զգուշութիւններն ալ թուլցան, և Եղիազարի այցելութիւններ ներուեցան։ Սա ոգի առած առաջին սարսափէն, սկսաւ յանձնարարել որ բոլոր աշխատանքնին Ս. Յակոբի համար գործածեն. և իրեն համար չհոգան. մինչեւ իսկ Կաֆացին նամակ գրելով յայտարարեց, որ ով կամեսցի հանել զիս աստի, աստանց կամիմ հոգի տանել աղօթիւքն Ս. Յակոբայ, նշխարացն յԱստուածոյ։ Բայց Եղիազարի համար աշխատողներ չպակսեցան, դիմումները շարունակեցին, և վերջապէս Քէօփրիւլին հրամայեց Եղիազարը արձակել, մինչեւ իսկ աստանց երէց փոխանորդ, որ առաջին տեսակցութենէ մնացած տպաւորութեան պիտի վերագրուի։ Եղիազար Ղալաթիա եկաւ 1659 մարտ 22'ին, Մեծպահոց վեցերորդ երեքշաբթին, 32 օրուան շղթայակապ բանտարկութենէ մը ետքը (ՉԱՄ. Գ. 681)։*

ԵՂԻԱԶԱՐ ԲԱՆՏԱՐԿՈՒԱԾ

**1737.** *Հազիւ թէ Եղիազար բանտէ ազատեցաւ, մտադրութիւն դարձուց Ս. Յակոբի գործին հետեւիլ, և Կ-Պոլսոյ մէջ տիրող կացութիւնը բարուքել։ Տեղեկալներու իշխանութիւնը՝ իրեն տեսութեամբ*

ալ ապօրինի բան մըն էր, մանաւանդ որ Երուսաղէմի համար հոգ տարած չէին, և իրենց հովանաւորող Ռուհիջանի հետ, իրենց կամքին ծախսած էին այն գումարները՝ զորս Եղիազար անոր հասուցած էր Երուսաղէմի խնդիրները վարելու համար։ Թըլթըլեանք արդէն ընկճուած էին Թովմասի մահուընէ ետքը, և մեծ եպարքոսին առջեւ ալ համարձակութիւննին կորսուած, ուստի կամայ ակամայ մասնակցեցան հասարակաց պարտք կոչուած գումարին մնացորդին վճարման (§1733), և այսպէս այդ խնդիրը փակուեցաւ չուտով։ Բայց նոր խնդիր մը բացուեցաւ զատկին օրը, ապրիլ 3'ին, Տաճիկներէ փոխ առնուած 14,000 դահեկանի վճարման համար, զոր անզակալներ ծախսած էին Թովմայի ազատութիւնը փութացնելու։ Տեղակալներ իշխանաբար կ'ուզէին զայն Երուսաղէմացւոց վճարել տալ, այլ Աստուածատուր պատրիարք և Մարտիրոս Կաֆացին վրանէրնէն նետեցին, վճարելու անկարողութիւննին յայտնելով։ Այն ատեն դարձան Եղիազարի վրայ ծանրանալ, բայց նա ընդհակառակն սկսաւ տեղակալները ամբաստանել, Ռուհիջանն ալ միատեղ, թէ Երուսաղէմի գումարները իրենց կամքին ծախսեցին, և ինքն սկսաւ իւր տուած գումարները պահանջել անոնցմէ։ Կառավարութեան առջեւ ալ նոյնը կրկնեց, երբ տեղակալներ գործը դատարանի հանեցին, և ժողովուրդին մէջ ալ նոյն խօսքերը տարածեց, մինչեւ որ ամէնքը տեղակալներու իշխանութիւնը վերջացնելու համար, Եղիազարը պատրիարք անուանել ուզեցին, բայց Եղիազար յանձնառու չեղաւ, և ընտրելի ներկայացուց Կաֆացին։ Ժողովուրդն ալ հաւանեցաւ և պաշտօնապէս կառավարութեան ներկայացուց, և 1659 մայիս 25'ին, Կարմիր կիրակիի երկուշաբթին, Մարտիրոս վարդապետ Կաֆացի, դեռ եպիսկոպոս չձեռնադրուած, պաշտօնապէս պատրիարք հռչակուեցաւ, և տեղակալներու իշխանութիւնը բոլորովին դադրեցաւ, Մուղնեցիին իջնալէն չորս տարի ետքը։ Այս առթիւ Եղիազար 10,000 դահեկան վճարեց պատրիարքութեան ծախքերուն համար, բայց

**ՄԱՐՏԻՐՈՍ ՊԱՏՐԻԱՐՔ**

տարեկան տուրքը միայն 140 հազար վճարուեցաւ, ինչպէս տեղակալներ յանձնառու եղած էին, և ոչ 400 հազար ինչպէս Թովմաս աճեցուցած էր (§1731)։ Միանգամայն պատրիարքին հրովարտակէն վերցուեցաւ Երուսաղէմ ալ անոր ենթարկեալ ըլլալուն յիշատակութիւնը, որ Թովմասի հրովարտակին աւելցուած էր (§1733)։

**1738.** Կը մնար 14,000 դահեկանին խնդիրը, որուն համար Եղիազար, Աստուածատուրի և Մարտիրոսի հետ, մինչև իսկ մեծ եպարքոսին բողոք մատոյց Ռուհիջանի և տեղակալներու դէմ, որուն առջեւ աստնք պարտաւորուեցան խոստովանիլ թէ Երուսաղէմի դրամներ ուրիշ նպատակի գործածուած են։ Բայց Քէօփրիւլին Եղիազարը համաձայնութեան յորդորեց, նկատելով որ Ռուհիջան [illegible] (ՉԱՄ. Գ. 683)։ Այս անգամ Կաֆացին ալ իբր պատրիարք, իւր ժողովուրդին կողմը սկսաւ խօսիլ, Եղիազարի և Աստուածատուրի դէմ։ Բայց Եղիազար անդրդուելի մնաց, մինչև որ օգոստոսի մէջ իրաւախոհութեան եկան, 14,000'էն 4'ը Երուսաղէմի, 6'ը վեց թաղերու, և 4'ը տեղակալներու վրայ բաշխելով։ Այս անգամ ալ Հիսարտիլի, Չինիլիհամամ, և Պալաթ թաղերու քահանաները սկսան դժուարութիւն յարուցանել, զորս Կաֆացին անգամ մը հնազանդեցուց քահանայագործութենէ դադրեցնելով։ Բայց խնդիրը նորոգուեցաւ, և դիմադրողներ եպարքոսական հրամանագիր մըն ալ առին և եկեղեցւոյ մէջ կարդալ ուզեցին, որուն պատրիարքը ընդդիմացաւ։ Այդ պատճառով եպարքոսական տեղակալութեան կողմէն Մարտիրոս պատրիարք և վեց պաշտօնական ազգայիններ բանտարկուեցան ալ։ Բայց վերջապէս ազգին մեծամեծները տեսնելով որ չնչին պատճառով խնդիրներ կ'երկարաձգուին, ոչ միայն անմիջապէս փրկանքը վճարելով պատրիարքն ու ընկերները բանտէ ազատեցին այլև մնացած պարտքն ալ տրեցին (ՉԱՄ. Գ. 687), և այսպէս փակուեցաւ այդ գծուծ և անպէտ խնդիրներուն շարքը։ Թերեւս արժան ալ չէր, որ այսչափ երկարէինք անոնց վրայ, բայց ուզեցինք ճաշակ մը տալ այն

**ՄՆԱՑՈՐԴ ՊԱՐՏՔԸ**

անկումին, ուր իջած էր ազգային կացու-թիւնը։

**1739**. Եղիազար այդ չփոթութեանց մէջ չէր մոռցած Երուսաղէմը, և երկու պատրիարքներու անուա-նով ալ խնդրագիր մա-տուցած էր մեծ եպարքո-սին, և մանրամասն տեղե-կութիւններով և հրովարտակներու յիշատա-կութիւններով ցուցուցած էր Հայոց իրա-ւունքը Ս. Յակոբայ վանքին վրայ։ Մեծ եպարքոսն ալ յատուկ պաշտօնեայ յղած էր Երուսաղէմ, ամենայն ինչ տեղւոյն վրայ ստուգել, և պատուաւոր ու տեղեակ անձե-րու վկայութեամբ հաստատել։ Երուսաղէմի այլազգիները առհասարակ և համարձակ վկայութիւն տուած էին, թէ ինչպէս ի սկզբանէ անտի Ս. Յակոբի վանքը Հայոց սեփականութիւնն էր, և Յոյներ անոր վրայ երբեք իրաւունք ունեցած չէին, և վկա-յութիւններն ալ օրինաւոր վաւերացումներ-րով հաստատուած էին։ Յատուկ պաշտօն-եան դարձած էր նոյն միջոցներուն, երբ պարտքերու խնդիրներն ալ փակուած էին. և Եղիազար երկրորդական հոգերէ ազատ-ուած, պատեհի կը սպասէր Ս. Յակոբի մա-սին դիմումը կրկնելու։ Որչափ ալ Եղիա-զարի սրտին մէջ սաստիկ էր ազգային սե-փականութեանց իրաւանց պաշտպանութեան հոգին, սակայն անուրանալի է, որ խիղճի խայթ մըն ալ կը կրծէր անոր սիրտը, որով-հետեւ ինքն էր եղած որ միամտութեամբ Ս. Յակոբայ բանալիները Թիյարօղլուին յանձնած էր իբր աւանդ (§ 1730)։ Ճիշդ այդ օրերուն մեծ եպարքոս Քէօփրիւլի Մէհ-մէտ փաշա մեծահանդէս տօնախմբութիւն մը կազմակերպած էր Պրուսայի մէջ, սուլ-տան Մէհէմմէտ Դ կայսեր ներկայութեամբ, իւր որդւոյն Քէօփրիւլի Ահմէտ փաշային, Կարնոյ կուսակալութեան պաշտօնով ուղե-ւորուելուն օրը։ Առիթէն օգտուեցաւ Եղիա-զար, փութաց ինքն ալ Պրուսա երթալ, ձեռքը լեցուն առատ և ընտիր նուէրնե-րով։ Եպարքոսութեան պաշտօնակալներուն ձեռօք մեծ եպարքոսին դիմեց, և վասն [illegible] Հայոց իրաւունքներուն հաս-տատութիւնը խնդրեց. և Քէօփրիւլին, որ արդէն համոզուած էր եկած պաշտօնագիր-ներով, հաճեցաւ խնդիրը թագաւորին ներ-կայել, և ստացաւ Հայոց իրաւունքները վերահաստատող հրովարտակը։ Խաչվերացի տօնէն մէկ երկու օր առաջ էր, երբ կայ-սերական հրամանը արձակուեցաւ Պրուսայի մէջ (ՋԱՄ. Գ. 687), իսկ 1659ին Խաչվերացը կը հանդիպէր սեպտեմբեր 11ին։ Հրովար-տակը մանրամասնօրէն կը յիշատակէ նախ-ընթաց հրամանագիրները և վճիռները, Յունաց նենգութիւնները, Թիյարօղլուին վրայ կը թողու գործուած զրկանքները, կը հրամայէ Հայերուն եկեղեցեաց, վանօրէից, ուխտատեղեաց և ամենայն սրբազանից իրաւունք-ները անխախտ պահել, կ'արգելու Յունաց հակառակութիւնները, որ մինչեւ իսկ Եթէ խափանութեամբ հրովարտակ ինչ հանել մտադրու-ցեն, մի՛ երբեք յարգ ընծայեսցի այնմ (ԱՍՏ. Ա. 362)։ Այդ հրովարտակին հիման Աստուա-ծատուր պատրիարք ճանչցուեցաւ տէր Ե-րուսաղէմի բոլոր ազգային սեփականու-թեանց։ Բայց լաւագոյն սեպուեցաւ, որ ինքն Կոստանդնուպոլիս մնայ տակաւին, և գործադրութիւնը Եղիազարի յանձնուի։ Ուստի անոր անուան փոխանորդութեան և և գործակալութեան պաշտօնագիր կազ-մուեցաւ՝ Նուիրակ անունով, և անով Եղիա-զար ճանպայ ելաւ, և Երուսաղէմ հասնելով տիրացաւ Ս. Յակոբի և բոլոր ազգապատ-կան սեփականութեանց 1659ին վերջերը, տօնախմբութեանց օրերէն քիչ առաջ։ Ըստ այսմ Հայոց մայրավանքը Յոյներու ձեռք մնացած կ'ըլլայ երկուքուկէս տարի 1657 մայիս 17էն սկսելով (§ 1730)։ Եղիազար ոչ միայն ազգային սեփականութիւններն ազա-տեց, այլեւ օգտակար ըննելով իւր դրամա-կան կարողութիւնը և պահած գումարները (§ 1729), և կանուխէն մտադրած նպատակն ալ իրականացնելով, չքեղացուց և ընդար-ձակեց մայրավանքին շատ մասերը իւր պաշտօնավարութեան քանի մը տարիներուն մէջ։ Այդ կարգէն կը յիշուին Էջմիածին մատուռ, պատրիարքական աթոռը, Յոպ-պէի կալուածները, Ռամլէի վանքը ու եկե-ղեցին, Գազայի եկեղեցին, և Մայրավան-քին արեղաթաղը (ԱՍՏ. Ա. 364)։

**1740**. Մարտիրոս պատրիարք, թէպէտ առաջին անգամ Եղիազարի ձեռքով միայն 140 հազար փող վճարած էր իբր տուրք,

սակայն երկրորդ տարին՝ Եղիազարի մեկնելէն ետքը 400 հազար պահանջուեցաւ, Թովմասի հրովարտակին

**ՂԱԶԱՐ ՊԱՏՐԻԱՐՔ**

հետեւողութեամբ (§1733), և Մարտիրոս Ադրիանուպոլիս գնաց, ուր էր արքունիքը, գործը կարգադրելու նպատակով, բայց չյաջողեցաւ, և 40 օր արգելական մնաց, մինչեւ իսկ իրեն ըսուեցաւ, թէ կան այլք, որք պատրաստ են տալ, և նորէն պատրիարքել։ Ազգային և պետական գործառնութեանց մասին դիտողութեան արժանի խօսք։ Մարտիրոս թերեւս զիջանէր, բայց Քէօմիւրճեան ընդդիմացաւ, և յաջողեցաւ յաւելուածական վճարումը իբրեւ կաշառք գործածելով՝ օրինական սակը չաւելցնել։ Մարտիրոս Ադրիանուպոլսէ մեկնեցաւ աւագ երկուշաբթի օր, 1660 ապրիլ 16'ին, Զատիկը Ռոտոսթոյ կատարեց ապրիլ 22'ին, և անկէ Կ-Պոլիս հասաւ (ՋԱՄ. Գ. 688), ուր քիչ օր առաջ, ապրիլ 7'ին, Ղալաթիոյ հրդեհն էր տեղի ունեցած։ Շատ չանցաւ, ահագին հրդեհ մըն ալ Կոստանդնուպոլիսը լափեց և անապատացուց, որ սկսաւ յամենայն յայլոց ի Թաւրիզոյ և Նախիջևանոյ, յառաջ ըմբռնեալ, ինչպէս կը գրէ ականատես Մեղրեցին (ԴԱՎ. 433), և չենք իմանար թէ ինչու ուրիշներ յուլիս 14'ին կը դնեն (ՋԱՄ. Գ. 691)։ Հրդեհը երեք օր տեւեց, և քաղաքին հիւսիսային ծայրէն սկսելով մինչեւ միջավայրին գագաթը տարածուեցաւ հովատակին՝ այսինքն հիւսիսային հողմոյն նպաստաւորութեամբ (ԴԱՎ. 434), և երկու կողմերէն ծովեզերքները իջնալով, իբր 30,000 տուն ու 3000 անձ այրեց։ Հայոց եկեղեցիներէն հրկիզեցան Ս. Նիկողայոս և Ս. Սարգիս, և հազիւ ազատեցաւ Գումքափուի եկեղեցին (ՋԱՄ. Գ. 691), զի հրդեհին մէկ ծայրը դադրեցաւ ի դուռն Աստուածընկալին, իմա՛ Գումքափուի, կոխեալ առեալ զդուռն կանից, այսինքն պատրիարքարանին (ԴԱՎ. 434)։ Պատրիարքին համար նոր տագնապի պատճառ մըն էր բազմաթիւ Հայերու անտուն և անինչ մնալը, և ահա ուրիշ դըժուարութիւն մըն ալ ծագեցաւ գաւառացիներու երեսէն։ Սասնք իրենց տեղերը պարտաւոր էին պետական տուրքերը տեղացիներու վրայ բաշխելով վճարել. բայց շատ գաւառացիներ մայրաքաղաք գալով կը հաստատուէին, և այլեւս իրենց հայրենիքին տուրքերուն չէին մասնակցեր, և տեղերնին մնացող խեղճերը կը նեղուէին։ Այս պատճառով Եւդոկիայէ, Սեբաստիայէ, Կամախէ, Տիվրիկէ և ուրիշ քաղաքներէ պատուիրակներ եկան Կ-Պոլիս, և մեծ եպարքոսին դիմելով արտօնութիւն ստացան իրենց գաւառացիները ցոյց տալ, որ վճարման բռնադատուին։ Ղազար Սեբաստացին, որ Տիվրիկի եպիսկոպոս եղած, և անկէ Կ-Պոլիս եկած էր (§ 1731), առիթ գտաւ գանգատաւորներու գլուխ անցնիլ, և Մարտիրոս պատրիարքը մեղադրելով կուսակիցներ շահիլ, որոց կ'առաջնորդէր Շրվան Տիվրիկցին։ Մարտիրոսը յորդորողներ եղան որ Ղազարը աքսորով հեռացնել տայ, բայց չի յաջողեցաւ. և Ղազար զօրացաւ, և Շրվանի օգնութեամբ կաշառք ու նուէր սփռելով, Մարտիրոսի պաշտօնանկութեան և իր պատրիարքութեան հրովարտակը հանել տուաւ, և պատրիարքարանին տիրացաւ 1660 նոյեմբերին (ՋԱՄ. Գ. 690)։ Մարտիրոս վերստին պատրիարքութիւնը ձեռք ձգելու համար Եղիազարի օգնութեան դիմեց, բայց սա լաւագոյն սեպեց Ղազարը պահել, և Մարտիրոսը Երուսաղէմի նուիրակ նշանակեց Արեւելեան վիճակները։ Իսկ Մարտիրոս առիթէն օգտուեցաւ 1661'ին Էջմիածին անցնիլ, ու Յակոբ կաթողիկոսէ Ղրիմի եպիսկոպոս ձեռնադրուիլ։ Թէպէտեւ մեծ ընդունելութիւն չգտաւ, բայց կրցաւ քանի մը տարի Ղրիմ մնալ, քանի որ ծնիկ Կաֆացի ալ էր (ՋԱՄ. Գ. 691)։

**1741.** Ղազարի պատրիարքութիւնն ալ, նախորդներուն նման՝ անակնկալներու և քմահաճոյքներու ենթարկեալ բան մըն էր, և պատրիարքութեան վրայ եղողը

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԹԻՒԹԻՒՆՃԻ**

ամէն տեսակ պարագաներէ օգուտ պէտք էր քաղեր աթոռին վրայ մնալու համար։ Ղազարին համար յաջողակութիւն համարուեցաւ այրած Ս. Նիկողայոսի վերաշինութիւնը, առանց նոր հրովարտակի, օգտուելով մեծ եպարքոսին բացակայութենէն, և Յոյներուն ինը այրած եկեղեցիներու վերաշինութեան նախաձեռնարկ ըլլալէն (ՋԱՄ. Գ. 691)։ Քէօփրիւլի

*Մէհմէտ մեծ եպարքոսը մեռաւ* 1661 *հոկտեմբեր* 31'*ին*, 5 *տարի պաշտօնավարելէն, և իբր* 30,000 *հոգի զանազան պատճառներով սպաննելէն ետքը, որուն հետեւանքը եղած էր, ահարկու դարձնել պետական իշխանութիւնը* (ԺՈՒ. 271)։ *Իր առաջարկութեան վրայ իրեն յաջորդեց որդին Քէօփրիւլիւ Ահմէտ փաշա, որուն երկու տարի առաջ Կարնոյ կուսակալութեան երթալը յիշեցինք* (§ 1738), *որ տակաւին* 26 *տարեկան էր* (ԺՈՒ. 271), *և աւելի յաճախ Քէօփրիւլիօղլու անունով կը յիշուի հօրմէն զատուելու համար։ Որդին ալ հօրը քաղաքականութեան սկսաւ հետեւիլ, և հազիւ թէ դարձաւ Մաճառաց դէմ պատերազմէն, առաջին գործերէն մին եղաւ հիմնայատակ ընել տալ առանց հրովարտակի վերաշինուած Յոյներուն և Հայերուն եկեղեցիները, նոյն իսկ զատկի օրը,* 1662 *մարտ* 30'*ին* (ՉԱՄ. Գ. 692)։ *Այսչափին ալ բաւեց որ Ղազար պատրիարքին կացութիւնը սկսի վրդովուիլ, և այս անգամ իրեն մրցակից հանդիսացողը եղաւ Յովհաննէս վարդապետ Արեւելցի, մականուանեալ Թիւթիւնճի, գուցէ շատ ծխող ըլլալուն համար։ Յովհաննէս ծննդեամբ Վասպուրականցի եղած պիտի ըլլայ, զի Հաւաքարանին համեմատ իւր առաջին պաշտօնները եղած են Հոգեաց Ս. Աստուածածին, Սալնապատու Ս. Գրիգոր և Վարագայ Ս. Նշան վանքերուն մէջ, և մանաւանդ այդ վերջինին արդիւնաւոր եղած է նորափոր առուով մը, որուն միայն հետքերը կը նշմարուին այժմ* (ՕՕ ԲԻՁ. 1198)։ *Յովհաննէս Էջմիածինի նուիրակութեան ելած էր, և լաւ գումար մը հաւաքած էր Կ-Պոլիս հասած ատեն, և Ղազարի մասին սկսած տժգոհութիւնները և կուսակցական հակառակութիւնները՝ զինքը քաջալերեցին պաշտօնին հետամուտ ըլլալ։ Թըլթըլեանց յարեցաւ, իւր դրամական միջոցները անոնց օգնութեան տրամադրեց, և Թըլթըլ երէցին հետ Քէօփրիւլիօղլուին ետեւէն Սիլիվրի գնաց, երբ սա Մաճառներու դէմ պատերազմին համար նորէն ճամբայ ելած էր, և պատշաճ վճարումներով պատրիարքութեան հրովարտակը ստացաւ կամ գնեց* (ՉԱՄ. Գ. 692), *և մայրաքաղաք դառնալով պատրիարքարանին տիրացաւ* 1663 *փետրուարին* (Օ1 ՕՐԱ. 104) *կամ* 1663 *մարտին* (ԺՈՒ. 272), *և աւելի ապահովութեան համար Ղազարն ալ բանտարկել տուաւ* (ՉԱՄ. Գ. 692)։ *Աղթամարի Հաւաքարանը՝ Թիւթիւնճիին պատրիարքութիւնը կը յետաձգէ* 1683'*ին* (ՕՕ ԲԻՁ. 1198), *սակայն Կ-Պոլսոյ աթոռին յիշատակները, որ աւելի ստուգապատում են, կը հերքեն այդ դրութիւնը։*

**1742.** *Յովհաննէս թէ պատրիարքութեան հասնելու և թէ պատրիարքութիւնը պահելու համար իբրեւ մեծ փաստ կը գործածէր կաթողիկոսական իրաւասութեանց տեսակէտը,*

**ՆՈՒԻՐԱԿՆԵՐՈՒ ԸՆԹԱՑՔԸ**

*իբր զի ինքը Էջմիածինի նուիրակ էր, մինչ Ղազար Սիսէ ձեռնադրուած էր* (§ 1729)։ *Սակայն ինքը անհաւատարիմ նուիրակ մը եղած էր, Էջմիածինի արդիւնքը իւր անձնական հետապնդութեանց ծախսած ըլլալուն համար, և որպէսզի հանրութեան մէջ պտտող շշուկը լռեցնէ, յայտնապէս կը խոստովանէր եղելութիւնը, բայց և կը խոստանար պատրիարքութեան արդիւնքով Էջմիածինի գումարները վճարել, և իրեն երաշխաւորներ կը ցուցնէր Խօսրով և Միրզա՝ Արեւելցի իշխանաւորները։ Նոյնը կը հաստատէր և Թըլթըլեան խումբը, որպէսզի ձեռքէ չհանէ իրեն կուսակից պատրիարք մը։ Այդ դիտմամբ երաշխաւորագիր ալ պատրաստուեցաւ Յակոբ կաթողիկոսի ղրկելու, և Մինաս Արեւելցի վարդապետի մը և աշխարհականի մը ձեռքով ճամբայ հանուեցաւ, խնդրելով որ հայրապետական կոնդակով մը հաստատուի Յովհաննէսի պատրիարքութիւնը։ Սակայն գիրը հասցէին չհասաւ։ Ղազարի կողմնակիցները ձերբակալել տուին թղթատարները Քարթալի մէջ, թուղթերը գրաւեցին, և տանողներ ծանր տուգանքով ազատեցան տասնօրեայ բանտարկութենէ ետքը։ Յովհաննէսի ակնկալութիւնը չիրականացաւ, մանաւանդ թէ աւելի վատթարացաւ, նոյն օրեր կաթողիկոսէն հասած գրութեամբ մը, որ Յովհաննէսի պատրիարքանալը լսելով, նուիրակութեան արդիւնքները կը պահանջէր, և Յովհաննէսը կը մեղադրէր, առանց Ղազարն ալ պաշտպանելու, որ Մայրաթոռոյ*

յայտնի հակառակորդ մըն էր։ Նամակին եռեւէն Կ-Պոլիս հասաւ Էջմիածինի նոր նուիրակը, Մինաս Գաղատիոյ առաջնորդը, բայց ժողովուրդը նուիրակներու ընթացքէն զզուած, անոր ալ երես չտուաւ, և ապարդիւն մնացին Մինասի ջանքերը (ՉԱՄ. Գ. 694)։ Արդէն իսկ ընդհանուր տժգոհութեան առիթ տուած էին Էջմիածինի նուիրակները, զորս Մայրաթոռն աւելի թուով և աւելի յաճախակի կը ղրկէր իր կարօտութենէն ստիպուած։ Նուիրակները իրենց հանգամանակութեանց փոխարէն միւռոն բաշխելու պաշտօնն ունէին, որով կը զեղծանէին չափազանց գումարներ պահանջելով, բռնանալով և կեղեքելով, հոգեւորական պատիժներ սպառնալով, առաջնորդներ և քահանաներ ուրանալու կամ փոփոխելու ալ կը միջամտէին, և ամէն կողմ խռովութիւն կը սփռէին, կուսակցութիւններ կը կազմէին, և ոչ միայն եկեղեցականներ անոնցմէ ձանձրացած էին, այլեւ ժողովրդականք զրգուանք կը զգային։ Իրաց կացութիւնը այնչափ ծանրացած էր, որ մինչեւ իսկ Օսմանեան պետութեան դիմումներ եղան, որպէսզի Պարսից տէրութեան սահմաններէն եկող նուիրակները արգիլէ, որոնք ոչ միայն ժողովուրդը կը կեղեքէին, այլեւ պետական տուրքերու վճարման արգելք կ'ըլլային։ Մեծ եպարքոսութեան կողմանէ ալ այդ իմաստով հրահանգներ ղրկուեցան կուսակալներուն (ԱՍՏ. Ա. 354)։ Նուիրակներու այդ գործերը, արդիւնքներու տարադէպ և անհաւասարիմ կիրառութեան պարագային հետ խառնուելով, դուռ բացին հակաթոռ կաթողիկոսութեան մը ստեղծուելուն, որուն պատմութիւնը չսկսած, պէտք կը զգանք Եւրոպիոյ հայաբնակութեան եղելութիւնները քաղել, ժամանակակից դէպքերը համընթաց քալցնելու համար։

**1743.** Փիլիպպոս կաթողիկոսի օրով Նիկոլ եպիսկոպոսի և Իլվովացոց մէջ 1652'ին կատարուած հաշտութիւնը, ինչպէս այն տեղ ալ ըսինք, անկեղծ և հիմնական բան մը չէր (§ 1703)։ Ժողովուրդը իր հայադաւանութեան հռոմէական կերպ մը տուած էր, Նիկոլ ալ իր հռոմէադաւանութիւնը հայկա-

**ՆԻԿՈԼ ԵՒ ԿԱԼԱՆՈՍ**

կան երեւոյթի ներքեւ ծածկած էր, բայց գոնէ դաւանական խնդիրներ դադարած էին, և պահէր մօնթէն մը կը տիրէր (ԲՍՆ. 160)։ Սակայն Նիկոլի գործերը, որ անդադրուած էին բարձր ատեանէ ալ, կը շարունակէին համարձակօրէն (ԲՍՆ. 28), և նա արքեպիսկոպոսարանին մէջ կ'ապրէր իւր սիրուհւոյն հետ, որ կուսաստանէ հանուած միանձնուհի մըն էր, և անկէ ունեցած երկու տղաքներն ալ իրենց քովը կը պահէին։ Տրտունջներ ընդհանուր էին, բայց ամէն մէտառան բաժանեալ յոկամայից իւր ժառանգէին, և 1652'էն մինչեւ 1662 նոյն կացութիւնը կը տիրէր։ Յակոբ կաթողիկոս ալ կրցաւ 1662 յունուար 12'ի կոնդակով Յովհաննէս վարդապետ մը նուիրակ ղրկել Լեհաստանէ իբաւունք և նպաստ, և միւռոնաբաշխութեան նուէրներ հաւաքելու (ԿԱՄ. 257)։ Միեւնոյն տարին Իլվով կը հանդիպի, Լեհաստանի արքունեաց մօտ պապական նուիրակ կամ դեսպան գտնուող Բինիաթելլի (Pignatelli) արքեպիսկոպոսը, և Հայեր՝ որ իբր թէ Հռոմի հետ միութեան մէջ էին, նուիրակէն կը խնդրեն որ Նիկոլը ուղղութեան բերէ։ Նուիրակը խրատներով և յորդորներով կը սկսի, բայց երբ կը տեսնէ թէ արդիւնք չունին, և Նիկոլ կամակոր է ուրեմն, արհամարհէ զամենեսեան և ոչ կամի լսել խնդրողաց, իշխանաբար գործելու կը ձեռնարկէ, և Մարիամ Լուդովիկէ թագուհիէն ալ աջակցութիւն գտնելով, կը հրամայէ բռնի կորզել Նիկոլէն զհրովարտակն նորա, զոր կ'ամուսնացնէ զինուորականի մը հետ մեծահարուստ օժիտ տալով, և երկուքը մէկտեղ կը ղրկէ ի Նեապօլիս վասն ուղղելոյ (ԲՍՆ. 160)։ Նուիրակը Հայ գաղութին ներքինն ալ զննելով, և շատ հեռու գտնելով կարծեցեալ հռոմէականութենէն, իսկոյն ընդդիմութիւն չցուցնելու չխրտչեցնելու համար, և կ'առաջարկէ որ իրենց համար Հռոմի ծախքով դպրանոց մը հաստատէ արժանաւոր եկեղեցականներ հասցնելու, որուն Հայերը միամտաբար կը հաւանին, և գործը Հռոմ գրուելով նպատակայարմար վարիչի մը առաքումը կը խնդրուի։ Հռոմ իսկոյն աչքը դարձուց Կղեմէս Կալանոսի վրայ, որ 1643'ին Կ-Պոլիսէ հեռանալէն իվեր Հռոմ կը մնար (§ 1696), իբր Թէաթինեան

միաբանութեան Կուիրինալի վրայ ունեցած Ս. Սեղբեստրոսի վանքին մեծաւորը (San Silvestro al Quirinale), և Փրոփականտայի Ուրբանեան դպրանոցին ուսուցիչն էր, և յատկապէս Հայերու համար կը գրէր և կը հրատարակէր։ Կալանոս ծերացեալ կ'ըսուի, թէպէտ 53 տարեկան էր տակաւին, բայց տկարացած ալ պաշտօնը ստանձնեց, և իրեն ընկերակից ընտրեց հայր Ալոիզիոս Փիթու (Louis Pitou) Թէաթինեան միաբանակիցը, և Բոնավենտուրա Քոսթուցցի (Bonaventura Costuzzi) աշխատաւոր եղբայրը, և Հռոմէ մեկնեցաւ 1663 սեպտեմբեր 30'ին։ Զրմեռը վրայ հասնելուն, պարտաւորուեցաւ մնալ Բաւարիոյ Միւնխէն (Munchen կամ Munich) քաղաքը, և հազիւ 1664 ապրիլ 17'ին հասաւ Լեհաստանի Վարշաւա (Varszawa կամ Varsovie) մայրաքաղաքը, ուր թագաւորական յանձնարագիրներն և նուիրակի հրահանգներն ալ ստանալով Իլվով մտաւ մայիս 1'ին (ԲՈՆ. 30), զոր պէտք է համեմատել հին տոմարի ապրիլ 21'ին։ Կ'երեւի թէ Հայեր օր անցնելով զգացին Բինիաթէլլիի ներքին միտքը, որովհետեւ Կալանոս և ընկերներ անօթեւանութեան հանդիպեցան Հայոց կողմէն։ Նիկոլ ալ թէպէտ արտաքնապէս սիրալիր ընդունելութիւն ցուցուց, այլ հարկաւ չսիրեց իւր վրայ իբրեւ քննիչ ղրկուած անձերը, և երեքին մէկտեղ բնակութեան համար ցուցուց սենեակ մը, ուր չորս ուրիշ անձեր ալ կը բնակէին (ԲՈՆ. 31), և շուրջ պատեալ էր չէղջ չէղջ աղբեւօք և տնկովք յէոց և արջառոց (ԲՈՆ. 33)։ Դպրոցի համար բնաւ տեղ չցուցուց, և միայն Կալանոսի սպառնալիքին վրայ, չորս բնակակիցները սենեակէն հանեց, և խոհանոցի համար հեռու տեղ մը ցուցուց, և քանի մը երիտասարդներու ներեց աշակերտիլ նոյն սենեակին մէջ, որոնք հազիւ 7 հատ էին, և տարի անցնելով 16 եղան (ԲՈՆ. 32)։ Այդ կաթական հաստատութեան Վարժարան երկոտասանից Նպարտանեաց անունը տրուած է (ՏԱՇ. 115)։

**1744**. Կալանոս և ընկերներ տեսան թէ կեղծեօք միայն և ի վերէն երեսս է միաբանեալն Հայոց ընդ եկեղեցւոյն Հռոմայ (ԲՈՆ. 31), ուստի իրենց պաշտօնական խակական նպատակին հետեւելով, ձեռնարկեցին պահանջումներ ընել հայադաւան և հայածէս կէտերէն այս ու այն ջնջելու, և հռոմէադաւան ու լատինածէս կէտերով փոխանակելու։ Նիկոլ հաւանութիւն կը ցուցնէր, բայց չէր գործադրեր, ժողովուրդին ատելի չըլլալու համար (ԲՈՆ. 33), որովհետեւ երբ անգամ մը Յակոբ Գրիգորեան քահանային ներեց բաժակին ջուր խառնել, փախճեալ արտաքոյ է նմանէ ժողովուրդն (ԲՈՆ. 36)։ Սակայն Կալանոս և ընկերներ իրենց նպատակէն չէին շեղիր, և իրենց խորհրդակից գտան Լազար Սլոնիովսքի (Lazar Sloniowski) անուն Լեհացի ազնուական մը, որ շատ երկիրներ պտտած էր, և 78 լեզուներ կը խօսի կ'ըսէին, բայց կոյր էր ի ծաղկում ամաց հետէ (ԲՈՆ. 36)։ Կալանոս և Փիթու այս մարդուն խրատներէն ալ քաջալերուելով, սպառնական դիրք կ'առնեն՝ Նիկոլի հանդէպ, թէ իրեն դէմ թագաւորին կը բողոքեն, և ժողովուրդին հանդէպ ալ, թէ միութեան անունով ստացած արտօնութիւնները ետ առնել կու տան (ԲՈՆ. 37)։ Ասոնք են անհա առաքելական զէնքերը, որով հռոմէականութիւնը իւր յաղթանակը կը կազմէ, և Նիկոլի բարոյականով մէկն է՝ իրենց յաջողութեան միջնորդը։ Ասով մէկտեղ Նիկոլ, երկու կողմերն ալ չկորսնցնելու համար, կ'աշխատէր Կալանոսի համոզել, թէ լաւ եւս էր յուղարկել ժամանակ մի և ակնկալնել բարեպատեհ ժամու, սակայն Կալանոս և իրեններ չեն կասիր, և ամէնէն առաջ պետական հրամանով 1664 նոյեմբեր 7'ին աքսորել կու տան Յակոբ Բրոսկի, բնիկ արեւելցի քահանայն, ինչպէս կ'ըսեն, ընկալեալ խմորեալն ի հերետիկոսութեան. տեսնելով թէ նա խոչընդոտ կ'ըլլայ իրենց ամենայն գործոց և կամաց։ Այդ աքսորը և չարունակ կրկնուած գրկումներու սպառնալիքները իրենց արդիւնքը կ'ունենան, որով Հայեր իրենց սովորական աւերեւոյթ զիջողութեան ձեւին կը դիմեն, և 1664 դեկտեմբեր 25'ին համաձայնութեան ձեւակերպութիւն մը կը կատարեն (ԲՈՆ. 38)։ Այդ զիջողութեան աւելի ազդեցիկ փաստեր կ'ըլլան, Նիկոլի համար՝ տարեկան 200 հռոմէական դահեկանի թոշակը (ԲՈՆ. 163),

և ժողովուրդին համար ալ՝ թագաւորական արտօնութիւնները դադարեցնելու սպառնալիքը (ԲՌՆ. 164)։ Կալանոս այսպէս զօրացած կը ձեռնարկէ հետզհետէ հայադաւան և հայածէս նշանները զեղչել տալ Հայոց եկեղեցիներէն։ Իբր սկզբնաւորութիւն 1665 յունուար 5'ին, որ է հին տոմարով 1664 դեկտեմբեր 26, Ս. Ստեփանոսի տօնին, Նիկոլի կողմէն բանադրանքի սպառնալիքով կը հրամայուի բաժակին ջուր խառնել, [illegible] յուզեցան խռովեցան ժողովուրդն ու հասարակ և քահանայք (ԲՌՆ. 38)։ Քիչ ետքը 1665 փետրուար 24'ին, հին տոմարով 14'ին, Տեառնընդառաջի տօնին, Նոր ձեռնադրուող երեք դպիրներուն հրապարակաւ արտասանել կու տան ըստ սովորութեան կաթոլիկաց։ Մարտ 18'ին Ստանիսլաւովի եկեղեցին և 20'ին Զամոստիայի եկեղեցին ալ նորութիւնները կը գործադրեն, ինչպէս Զամոստիացի Սիմէոն քահանան կ'արձանագրէ, թէ մտան այսօր հերետիկոսութեան յեկեղեցին Հայոց Զամոստիոյ։ Մարտ 21'ին, հին տոմարով 11'ին, Մուտն ի վիրապ տօնին, Սուրբ Աստուած փառաբանութենէն կը զեղչեն Որ խաչեցար վասն մեր բառերը (ԲՌՆ. 39), և Քրիստոս ի մէջ մեր յայտնեցաւ, ու Մարմին տէրունական և արիւն փրկչական կայ առաջի՝ երգերուն խօսքերը ապառնիի կը փոխեն։ Միանգամայն հանգանակին մէջ Հաւատամք ի մի կաթողիկէ եկեղեցի մասէն մի բառը կը զեղչեն, եկեղեցւոյ միութեան հակառակ կարծելով։ Յիշեալ 1665 տարին ապրիլ 2'ին, հին տոմարով մարտ 23'ին աւագ հինգշաբթի օրը, տօնական երգերուն և շարականներուն մէջ 30 փոփոխութիւններ կը մտցնեն, զոր Փիթու աղաւաղեցան Հայոց ժողովրդեանք կ'անուանէ։ Ապրիլ 14'ին, հին տոմարով 4'ին Նոր կիրակէի երեքշաբթին, կ'արգելուի վերաբերութեան ատեն ծնրադրել (ԲՌՆ. 40), և այսպէս հետզհետէ կամայական փոփոխութեանց կը յաջորդեն հալածանքներ և աքսորներ և զրկումներ այն Հայ եկեղեցականներուն դէմ, որոնք կամակար չէին հնազանդիլ Կալանոսի թելադրած և Նիկոլի հրամայած նորաձեւութիւններուն, որոցմէ մնացածները աւելորդ կը սեպենք անուններով յիշատակել (ԲՌՆ. 41—44)։ Մեծ հակառակութեան և հալածանքի կը հանդիպի Յակոբ կաթողիկոսի Նուիրակ Պօղոս Եւդոկիացի վարդապետն ալ, որ 1655 յուլիս 11'ին Իլվով հասնելով կը պնդէր, թէ Հայերուն օրէն չէ որեւէ փոփոխութիւն կատարել, մինչև հաւանեցի ընդ այն կաթողիկոսն Յակոբ (ԲՌՆ. 44)։ Նուիրակին դէմ հակառակութիւնները ամիսներով կը շարունակեն, մինչեւ որ 1665 հոկտեմբեր 29, կը բռնադատեն Լեհաստանէ ելնել, որով զինչ մինչեւ ցայժմ Նուիրակէն յաջողէր գործն միութեան (ԲՌՆ. 49), կը գրէ Փիթու։ Բայց և կը խոստովանի, թէ ամենայն ինչ իրենց կը յաջողէր, վասն ամի ամի Բողոկէն 200 դահեկանաց, զոր Հռոմ Նիկոլին կը ղրկէր (ԲՌՆ. 42), այն Նիկոլին, որուն անառակ կեանքը յայտնի էր Հռոմին, և դատապարտուած էր պապական նուիրակէն (§ 1742)։

**ՈՍԿԱՆ ԵՐԵՒԱՆԵՑԻ**

**1745.** Եւրոպակողման մէջ կատարուած գործերէն մէկն ալ տպագրական ձեռնարկին հետապնդումն էր, որ Մարեցիին մահուընէ ետքը Ոսկան Երեւանեցիին յանձնուեցաւ, և այն ալ իրմէ առաջ ճանպայ հանեց Կարապետ Ադրիանեցին (§ 1727)։ Ոսկան վարդապետ Ղլիճենց տոհմէն էր (ՏՊԱ. 100), և թէպէտ Երեւանեցի կոչուած իւր ծագումին համար, բայց Սպահան ծնած էր 1614'ին, և նախ այն տեղ Խաչատուր Կեսարացիին աշակերտած, անգամ մը Մովսէս կաթողիկոսի օրով Էջմիածին եկած, բայց նորէն Սպահան դարձած, և Փիլիպպոս կաթողիկոսէ Մայրաթոռի ծառայութեան հրաւիրուած, Ուչիի վանքըն ալ իրեն յանձնելով (§ 1713)։ Ոսկան ուշիմ և զարգացման ծարաւի՝ մտերմութիւն կապեց Պօղոս Փիրոմալլի լատին կրօնաւորին հետ, որ Էջմիածին կը մնար (§ 1676), և անկէ ուսաւ լատին լեզուն, երբ Լատինն ալ իրմէ հայերէն կը սորվէր, երկուքն ալ անկատար՝ բայց յաւակնոտ, որով անընտել և անսովոր ոճով, և աղաւաղ և անպէտ շարադրութեամբ թարգմանութիւններու ձեռնարկեցին, մինչեւ իսկ նախնեաց գրուածներուն և Աստուածաշունչին թարգմանութեան ձեռք մտցնել յանդգնեցան (ՋԱՄ. Գ. 620)։ Փիրոմալլի 1639'ին Հռոմ դարձած ատեն, Հայոց կաթողիկոսին փափաքը լրացընելու դիտմամբ հայերէն Աստուածա-

*շունչի տպագրութեան հետամուտ եղաւ, բայց նախնեաց Եօթանասնից թարգմանութիւնը լատինական Վուլկաթային համաձայնեցնելու համար շատ կտորներ եղծեց, այնպէս որ պապական գրաքննութիւնն իսկ իրեն չներեց զայն հրատարակել: Փիրոմալլի 1642'ին Էջմիածին գալով նորէն Աստուածաշունչի կայմութեան աշխատեցաւ Ոսկանի հետ, բայց միշտ նոյն նախապաշարեալ դիտմամբ, և հայերէն օրինակը լատինականին վրայ ձուլելու փափաքով* (ՁԱՄ. Գ. 621): *Երբոր Յակոբ կաթողիկոս Ոսկանի եպիսկոպոսական ձեռնադրութիւն տալով Արեւմուտք ուղեւորեց, Աստուածաշունչի տպագրութիւնը գլխաւոր նպատակն էր, իսկ Ոսկանի մէկտեղ առած օրինակը, վերը յիշուած Թռնագրօսեալ օրինակն էր: Էջմիածինէ մեկնեցաւ* 1662'*ին, և ուղիղ գնաց Ալիգուռնա, որ է Լիվօռնօ քաղաք Իտալիոյ, ուր եկած էր իւր եղբայրը Աւետիս, որ Ոսկանի անունին փոխանցեց Տարեցիէ միացած Ամսդերդամի տպարանը* (§1727): *Ոսկան Հռոմի ու Ալիգուռնայի մէջ երթեւեկեց վաճառականներէ պէտք եղած միջոցները հայթահայթելու համար, և միայն երեք հոգի գտնուեցան օգնող, Ստեփանոս Խանենց, Թէոդորոս Բժրեշենց և Պետրոս Տէր-Աւագենց, տպագրութեան արդիւնքէն իրենց տուած գումարը ետ առնելու, և շահը Էջմիածնի և Երուսաղէմի և Ուշիի վանքերու վրայ բաժնելու պայմանով* (ՁԱՄ. Գ. 659): *Այդ հիմամբ պայմանագիր ալ կազմելով, Ոսկան անցաւ Ամսդերդամ, ուր հասած կ'ըլլայ* 1663'*ին, և անմիջապէս ձեռնարկեց նոր տառեր և զարդեր և պատկերներ պատրաստել Աստուածաշունչի տպագրութեան մեծ գործին, զանց չընելով նոյն միջոցին առձեռն զանազան հրատարակութիւններ ընել: Աստուածաշունչի տպագրութիւնը սկսած է* 1666'*ին* (ՁԱՄ. Գ. 660), *բայց անկէ առաջ* 1665 *յուլիս* 23'*ին Իւլվով կը հասնի Վարդան արեղայ մը, Ոսկան եպիսկոպոսին կողմէ նամակով, ուր Ամսդերդամի մէջ կրած դժուարութիւնները յիշելով՝ Նիկոլի կ'առաջարկէր տպարանը Իւլվով փոխադրել: Կալանոս առիթը յաջող կը գտնէ իւր ձեռքին ներքեւ նոր միջոց մըն ալ ունենալու, և հաւանութեան գիր գրել կուտայ Ոսկանի. մանաւանդ որ գիտէր թէ Ոսկանէ կը հրատարակուէին* [illegible]*, և Ոսկան միացած էր ընդ կաթողիկոսին Էջմիածնի* (ԲՈՆ. 45), *որով Ոսկանը Իւլվով բերելով հայադաւանութեան նոր հարուած մըն ալ տրուած կ'ըլլար: Ոսկան այլ եւս չպատասխաներ, և իւր գործը կը շարունակէ Ամսդերդամի մէջ: Փիթու կը կասկածի թէ Ոսկան միտքը փոխած է՝ իրենց Իւլվով դառնալուն պատճառով* (ԲՈՆ. 40):

**ՈՍԿԱՆԵԱՆ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ**

**1746.** *Երկու տարի աշխատեցաւ Ոսկան Աստուածաշունչի տպագրութիւնը լրացընելու, զոր* 1666'*ին սկսելով աւարտեց* 1668-*ին* (ՁԱՄ. Գ. 660), *և է առաջին տպագրուած հայերէն Աստուածաշունչը, որ նախորդ կաթողիկոսներէն շատերուն, Սալմաստեցիէն սկսելով, մեծ փափաքն էր եղած: Ոսկանին տպագրութիւնը միակ հատոր մըն է, սովորական քառածալ մեծ, գրեթէ խորանորդի մօտեցող գիրք մը, իւր արտաքին ձեւերովը իրմէ առաջ կատարուած բոլոր տպագրութիւններէն գերազանց գործ մըն է, տառերը ընտիր ձեւով, այժմ ալ իբր տիպար սեպուելու արժանի, պատկերներով և զարդերով ճոխացած, որոնք ամէնքը կրնան պատիւ բերել Ոսկանի արուեստագիտական հանճարին: Դժբախտաբար նոյն գովեստը պիտի չկարենանք կրկնել տպագրուած բնագիրին համար, որ աւելի նախնեաց ընտիր թարգմանութեան աղաւաղումը և խանգարումը կրնայ ըսուիլ: Ձենք գիտեր թէ այն՝ Փիրրոմալլիի հետ Էջմիածնի մէջ կազմուած օրինակն է* (§1745), *թէ ոչ անկէ ետքն ալ Ոսկան իւրովի ուրիշ փոփոխութիւններ ալ մուծած է, աւելցնելով կամ պակսեցնելով: Ամէն առթի մէջ անտեղի ձեռնարկ մը եղած է Ոսկանի ըրածը, թերեւս անգիտակցաբար, մանաւանդ Հին կտակարանին վրայ, այս է Եօթանասնից օրինակը՝ ուսկից եղած է մեր նախնեաց թարգմանութիւնը, համաձայնեցնել եբրայական օրինակին, որ եղած է լատին թարգմանութեան բնագիրը: Ոսկանի տպագրութեան ըլլալիք դիտողութեանց գլխաւորները հետեւեալներն են: Հայերէն Աստուա-*

ծաշունչը մինչեւ այն ատեն կը պահէր միայն հին Ամմոնեան եւ Եւթաղեան բաժանումները, որով իւրաքանչիւր գիրք բաղմաթիւ մանր գլուխներու բաժնուած էր։ Իսկ Լատիններու գործածական դարձած՝ գիրքերուն գլուխներու եւ գլուխներուն համարներու բաժանումը, որ Հուգոնեան կը կոչուի, Հայերուն անծանօթ էր։ Ոսկան զայն հայերէնին ալ պատշաճեցուց, որ բնաւ անտեղութիւն չէր ունենար, եթէ հայերէն բնագիրը այլայլուած չըլլար, եւ այս կերպով Յակոբ կաթողիկոս ալ կրնար զայն թոյլատրած ըլլալ։ Իրօք ալ ըսուած է, թէ տպագիր օրինակը գրչագիրներէն տարբերելով, հրամանաւ քննողաւն փոխան Յակոբայ Հայոց կաթողիկոսի՝ գլխաւորեալ և տնօրինեալ է ըստ դաշնադրականաց (ՏՊԱ. 109)։ Բայց ասկէ դուրս ըրածներուն համար կաթողիկոսական հրաման սոսյած չէ, եւ իւրովի գործեր ըրած է, ինչպէս են՝ հայերէն օրինակը լատինականին յարմարցնելու համար յաւելուածներ ընել, խօսքեր այլայլել, համարներ տեղափոխել, բառեր փոփոխել, տարօրինակ ոճով հայերէն մը ներմուծել, եւ խորթ լեզուով նորէն գիրքեր թարգմանել, ինչպէս Սիրաքը, Չորրորդ Եզրը եւ Երեմիայի թուղթը։ Այս փոփոխութեանց համար Ոսկան իւր օրով ալ մեղադրանքներ լսած է մասցի եւ խղճամիտ բանասէրներէ, զորս ինքն անվաւերական և երկրորդայն կանոնական կ'անուանէ, բայց աւելի իր յանդգնութեան կրնային պատկանիլ այդ կոչումները։ Այսու հանդերձ տպագրութեան դիւրութիւնը եւ գրչագիրներու նուազութիւնն ու թանկութիւնը պատճառ եղան Ոսկանին օրինակներուն ամէն կողմ տարածուելուն, եւ անոր վրայէն կատարուեցան Գէորգ Լատինացիի 1705'ին Կ-Պոլիս, եւ Միխիթար Սեբաստացիի 1733'ին Վենետիկ հրատարակած նոր տպագրութիւնները, թող նոր կտակարանի կամ չորս աւետարաններու մասնաւոր տպագրութիւնները։ Մինչեւ իսկ անոր հետեւողութեամբ կազմուեցաւ Թաղէոս երէցին 1686'ին Վենետիկ հրատարակած Ճաշոցը։ Եւ այսպէս շարունակեցին հրատարակութիւնները երկար ատեն, մինչեւ որ 1805'ին Վենետիկի մէջ հրատարակուեցաւ Զոհրապեան Յովհաննէս վարդապետի նախնեաց թարգմանութեան հետեւողութեամբ կազմած օրինակը։

1747. Ոսկանի տպագրական գործունէութեան պատմութիւնը լրացնելու համար, համառօտիւ քաղենք Աստուածաշունչի հրատարակութենէն ետքը կատարուած գործերը,

**ՈՍԿԱՆԻ ՁԱՆՔԵՐԸ**

կրած ծանր դժուարութիւնները եւ տեսակ տեսակ տագնապները։ Ոսկան Ամստերտամ մնաց մինչեւ 1669 տարին, եւ քանի մը ուրիշ գիրքեր ալ հրատարակեց, բայց ստիպուեցաւ քաղաքէն հեռանալ, թէպէտ այնտեղ յարմարութիւններ ունէր թէ արուեստական միջոցներուն եւ թէ գրաքննական պայմաններուն կողմէն։ Հեռանալուն պատճառը պարտատէրներուն երեսէն նեղուած ըլլալն էր, զի դրամական միջոցները պակսած ըլլալուն՝ անձնական պատասխանատուութեամբ պարտքերու ներքեւ ինկած էր։ Գրուած է թէ Ալիգունացի երեք վաճառականները տուած խոստմունքնին չի կատարեցին (ՏՊԱ. 109), բայց աւելի հաւանաբար նախնական պայմանէն աւելին չվճարեցին։ Արեւելք ղրկուած օրինակներէն մաս մը նաւաբեկութեամբ կորսուեցաւ, մաս մըն ալ յամրաբար վաճառուեցաւ, եւ գինը Ոսկանի շուտով չդարձաւ (ՁԱՄ. Գ. 661)։ Մինչեւ իսկ Ոսկան իւր տպարանը գրաւումէ ազատելու համար, Կարապետ Ազրիանեցիի անունին դարձուց (ՏՊԱ. 111), եւ այս կերպով կրցաւ Ամստերտամէ խոյս տալ, եւ տպարանը բովանդակ կազմածովը Ալիգուռնա փոխադրել։ Սակայն Իտալիոյ մէջ գրաքննութիւնը խիստ էր, եւ համեմատաւան սկզբունքներէ դուրս բան մը տպագրել անհնար էր։ Ուստի երբ տպարանը Ալիգուռնա կը բերէր, միւս կողմէն 1669 մայիս 26'ին Գաղղիոյ Լուդովիկոս ԺԴ թագաւորին կը դիմէր, հայերէն Աստուածաշունչէն օրինակ մըն ալ յղելով, որ արտօնուի անոր երկիրներուն մէջ բանալու իւր տպարանը, Գաղղիոյ գրաքննութիւնը Իտալիայէ աւելի լայնախոհ ենթադրելով։ Ալիգուռնա դիմելովը երեք չահակից վաճառականներուն հետ ալ կարգադրութիւն մը կրնար յուսալ, բայց անոնք արդէն Ամստերտամէ Թաղէոս երէցի ձեռքով իրենց

յղուած գիրքերը գրաւելով, Ոսկանին պարտքերուն դարման մը չէին բրած (ՏՊԱ. 110), Յակոբ կաթողիկոսէ գալիք դրամական օգնութիւնն ալ պարապի ելած էր (ՏՊԱ. 116), զի կաթողիկոսը հակաթոռութեան տագնապներով շրջապատուած, ինչպէս պիտի տեսնենք, որեւէ ձեռնտուութիւն ընելու անհնարութեան մատնուած էր։ Դրամական նեղութեանց հետ, Հռոմէ հրամայուած գրաքննական դժուարութիւններն ալ աւելցան Ոսկանի վրայ, որոնք սաստկացան Փիթուի գրգռութեամբ, որ 1672 յունուար 17'ին Հռոմ հասած էր, Իլվովէ դառնալով (ԲՌՆ. 216), և Ոսկանի դէմ շատ գէշ տրամադրուած էր, Դավրիժեցիին պատմութեան 1669'ին կատարուած տպագրութիւնը տեսնելով, որուն մէջ հռոմէականներու ճիգերը, և յատկապէս Լեհաստանի և Նիկոլի գործերը ուժգին ձաղկուած էին (ԲՌՆ. 215)։ Ոսկան, որ Ամստելոտամի մէջ 19 կտոր հրատարակութիւններ կատարած էր, հազիւ երկու մանր գիրքեր կրցաւ տպագրել Լիվոռնոյ 1670'ին. իսկ Մարսիլիա հազիւ կրցաւ 1673'ին գործի սկսիլ։ Վտանգի այն տեղ ալ հասան Հռոմի հրահանգները, որոնք արքունական հաստատութիւն ալ ստացան և կրօնական իշխանութեան յանձնարարուեցան։ Ոսկան Մարսիլիա և Փարիզ անձամբ երթեւեկելէ ետքը (ՏՊԱ. 114), իւր տպագրական անզուսպ փափաքը լրացնելու համար, յանձնառու եղաւ գրաքննական խստութեանց ենթարկուիլ, և մինչեւ իսկ հաւատոյ դաւանութիւն ստորագրել հռոմէական վարդապետութեան համաձայն (ՏՊԱ. 115)։ Ահա թէ ինչ պայմաններու ներքեւ ստիպուեցաւ Ոսկան հռոմէադաւան միտքով փոփոխութիւններ մտցնել իւր տպագրած ծիսական գիրքին մէջ, որոնց համար այնչափ մեծ գոհունակութիւն կը զգան հռոմէականներ (ՉԱՄ. Գ. 661)։ Անոնք երբեք Ոսկանի միտքին յայտարարութիւնները չեղան, այլ բռնադատեալ համակերպութիւններ։

**1748.** Ծիչդ այդ հոգեմաշ տագնապներուն պէտք է վերագրենք Ոսկանի տարաժամ մահն ալ, որ տեղի ունեցաւ Մարսիլիոյ մէջ հազիւ 60 տարեկան եղած ատեն, երբ շատ աւելի արդիւնքներ հնար էր սպասել, իրեն նման տոկուն և անխոնջ բնաւորութեան վիճակեալ անձէ մը։ Ոսկան իրեն դժբախտութենէն անհաւատարիմ և

**ՈՍԿԱՆԻ ՄԱՀԸ**

նենգաւոր ընկերակիցի մըն ալ հանդիպեցաւ, ինչպէս եղաւ Թադէոս Համազասպեան, ծագմամբ Երեւանեցի, և ծննդեամբ Ասպահանեցի երէցը։ Ամստելոտամի մէջ եկած յարած էր Ոսկանի, և անոր գործակից կը գտնուէր Լիվոռնոյի մէջ, իսկ Մարսիլիոյ տպարանին չահակից ընկեր ալ եղաւ, բայց աւելի տղուրանը ճճացնելու և ցեխոտեալն լայնը մաքրելու նպատակով, ինչպէս ըսած են զինքը ճանչցող ժամանակակից Ջմիւռնացիք (ՏՊԱ. 115), որոնք զայն ոչ միայն տանուտէր, այլ և երկոտանեայ կոչուելու անարժան կը համարին (ՏՊԱ. 117)։ Ուստի ամենայն իրաւամբ կրնանք կասկածիլ, թէ Թադէոս անմասն չէր Ամստելոտամի և Լիվոռնոյի մէջ ալ Ոսկանի կրած նեղութիւններուն պատասխանատուութենէն։ Նա իւր նենգապատիր գործունէութիւնը պսակեց Ոսկանը ամբաստանելով 1673'ին վերջերը, թէ նոր սկսուած ժամագիրքի տպագրութեան մէջ հերետիկոսական մասեր կը պարունակուին, և խնդիրը հանելով պետական և կրօնական ատեաններուն առջեւ։ Այդ զրպարտութենէն քիչ օրեր ետքը, 1674'ին սկիզբը վախճանեցաւ Ոսկան (ՏՊԱ. 117), աւելի սիրտին ցաւէն և ներքին մորմոքէն։ Այս կերպով տպագրութեան ձեռնարկին կատարելապէս նահատակ մը եղաւ տպարանի փոշիներուն մէջ թաւալող այդ սրբազան արքեպիսկոպոսը, մինչ շատ դիւրին էր իրեն, իւր ծագումով և աստիճանով՝ փառքերու և հեշտութիւններու մէջ անցընել իւր կեանքը, իւր դասակից եկեղեցականներուն նման (ԼէՕ. 182)։ Ոսկանի անձնաւորութիւնը արժանի է մեր ազգին մտաւոր զարգացման տեսակէտէն՝ մեծ երախտաւորներու կարգը դասուիլ, և Հայ տպագրութեան իսկապէս մղում տուողը ճանչցուիլ։ Նախընծայ տպագրութիւն ճանչցուած 1512 և 1513 տարիներու Յակոբի հրատարակութիւնները, միայն ժամանակագրական փառք մը ունեցան, առանց իրական օգուտի։ Աբգար Եւդոկիացիին ձեռնարկն ալ ամփոփուած ու սեղ-

մուած մնաց, ու անհետացաւ. Ոսկանի գործն է, որ իւր տարաբախտ մահուանէ ետքն ալ շարունակեց, և չորցած բոյսէ մը թափուած սերմերու նման բողբոջները բազմացան։ Իւր քեռորդին Սողոմոն Լեւոնեան, իւր ազգականը Պետրոս Լատինացին, իւր գործակատարը Նահապետ Գրիգորեան, իւր գրաշարը Մատթէոս Վանանդեցին, և նոյնիսկ իւր դաւաճանը Թադէոս Երեւանեցին, տպարաններու վարիչներ եղան Մարսիլիա, Կ-Պոլիս, Ամստերդամ և Վենետիկ, և հետզհետէ ընդարձակուեցան Հայ տպարաններու թիւն ու արդիւնքը։ Դաւանական տեսակէտէն, հռոմէականներ իրենց համախոհ մը եղած կը կարծեն Ոսկանը, սակայն յառաջ բերուած պատմական պարագաներ կը ցուցնեն, թէ պատահարար և բռնադատեալ առ երեսս համակերպող մը եղած է նա, և ոչ աւելի։ Եւ այն ալ տպագրական ձեռնարկը չխափանելու և չխանգարելու համար, ինչպէս շատ լաւ զգացին իւր հալածող ու քննադատ Փիթոնները, և ինչպէս ցուցուցին Դավրիժեցիին պատմութեան և նման գիրքերուն հրատարակութիւնները։ Նոյն կէտը կը հաստատուի նաև՝ մինչև իւր մահուան օրը կրօնամոլ հռոմէականներէ և նենգամիտ դաւաճաններէ այդ երեսէն ամբաստանուած ըլլալովը։ Գերեզմանին ալ անյայտ մնացած ըլլալը, կրնայ իբր նշան նկատուիլ թէ իւր յիշատակը պատուոյ արժանացած չէ տեղւոյն կրօնական շրջանակին մէջ։ Մենք զինքը մեղադրեցինք Աստուածաշունչի նախնեաց թարգմանութիւնը այլայլելու և աղաւաղելու ձեռնարկած ըլլալուն համար (§ 1746), բայց աւելի գործին և ոչ գործողին մասին է մեր դատաստանը, զի կ'ընդունինք թէ բարեմիտ կրցած է ըլլալ Ոսկանի նպատակը, հայերէն Աստուածաշունչը թերի կարծելով, քանի որ սուրբ գրոց ուսումը Հայերուն անծանօթ էր, Եւրոպայի մէջ ալ մշակուած չէր, և Ոսկան կրնար իբր տիպար ենթադրել լատին աշխարհի մէջ գործածական եղած բնագիրը։

**1749**. Ոսկանի վրայ խօսելիքը չփակած կ'ուզենք յիշատակել իրեն վերագրուած գործ մըն ալ (ԱՐԱ. 231), այն է Հայ եկեղեցւոյ նուիրապետութեան վիճակագրական ցուցակը։ Արեւմտեան եկեղեցւոյ նուիրապետութեան արքեպիսկոպոսարաններու և եպիսկոպոսարաններու կանոնաւոր

**ՈՍԿԱՆ ՎԻՃԱԿԱԳԻՐ**

բաժանման դրութիւնը տեսնելով, և իւր եկեղեցւոյն պատիւը պահպանելու նախանձայուզութեամբ, նմանօրինակ ցուցակ մըն ալ կազմած է Ոսկան Հայ եկեղեցւոյ նուիրապետութեան համար, թէպէտ մենք կը կարծենք թէ իսկականին և իրականին ճիշդ պատկերը եղած պիտի չըլլայ իւր ցուցակը։ Հայոց նուիրապետութեան արքեպիսկոպոսական նահանգներու կամ մետրապոլտութիւններու, և անոնց ենթարկեալ եպիսկոպոսարաններու բաշխուած ըլլալը, ոչ միայն կանոնաւոր ցուցակներով մեզի հասած չէ, այլեւ ոմանց կարծիքով Հայ եկեղեցին այսպիսի դրութիւն ունեցած չէ։ Մենք չունենալուն համակարծիք չենք, ապա թէ ոչ դժուար կ'ըլլար բացատրել նահանգներու անունով կոչուած եպիսկոպոսները, զորօրինակ Սիւնեաց, Ծոփաց, Աղձնեաց, Մոկաց, Տայոց, եւայլն, երբ նոյն նահանգներուն գաւառներն ալ և քաղաքներն ալ յատուկ եպիսկոպոսարաններ ունեցած են։ Աստով մէկտեղ կանոնաւոր ցուցակներ չունինք նուիրապետութեան կազմութիւնը քաղելու համար, մանաւանդ Ոսկանի ապրած դարուն մէջ, ուր այլեւս նահանգներ և գաւառներ ալ քաղաքական նշանակութիւննին կորուսած էին, և կաթողիկոսներ ըստ հաճոյս և ըստ բերման թեմակալներ կամ առաջնորդներ կը ձեռնադրէին։ Մենք կը սիրենք գնահատել Ոսկանի դիտումը որ ուզած է իւր եկեղեցին կարգաւորեալ ներկայացնել Լատին աշխարհին առջեւ, և իրականը կանոնականի մերձեցնելով ցուցակ մը կազմած է։ Աստով մէկտեղ այդ ցուցակը կարեւոր կը նկատուի, գոնէ ժամանակին տիրող մեծ բաժանումները, և նոյն ատեն գործածուող նուիրապետութեան պատկերը գիտնալու համար։ Ցուցակը միայն լատիներէնով պահուած է, և հաւանաբար հայերէն բնագիր ալ ունեցած չէ, զի ուղղակի օտարներու համար կազմուած է։ Ոսկանին ցուցակը՝ բոլոր վիճակները երկու կաթողիկոսութեանց վրայ կը բաժնէ, այսինքն Էջմիա-

ծին և Սիս, և նշանակուած աթոռները Ալիշան համրած է 138, որոնցմէ 47 արքեպիսկոպոսական և 91 եպիսկոպոսական (ԱՐԱ. 231)։ Սակայն ցուցակին մէջ (ՊէՆ. Ա. 820), եկեղեցական նահանգ կազմող արքեպիսկոպոսարանները 17 են, և անոնց ներքև եպիսկոպոսարաններէ զատ պատուակալ արքեպիսկոպոսարաններ ալ յիշուած են։ Սոյն կաթողիկոսութիւնը իբր միակ նահանգ կը նկատուի, իսկ Աղթամարը իբրև պարզ արքեպիսկոպոսարան կը յիշուի, որ կաթողիկոսական անուն կը վերագրէ իրեն։ Մենք կ'ուզենք այս ցուցակին քաղուածը տալ, որչափ հնար է հայկական անուններուն մերձեցնելով, զի մեր ձեռքն եղած օտարալեզու ցուցակը գրչագրական և տպագրական շատ փոխանցումներ ունեցած է, և անբացատրելի անուններ ալ կը պարունակէ։ Շատ եպիսկոպոսարաններուն բուն անունէն զատ, եպիսկոպոսին բնակած վանքն ալ ցուցուած է, զոր մենք զանց կ'ընենք համառօտութեան համար, բաւական սեպելով համառօտ քաղուած մը տալ, և մերձաւորաբար ներկայել ԺԷ դարուն մէջ Հայ Նուիրապետութեան կազմութիւնը։

**ՎԻՃԱԿՆԵՐՈՒ ՔԱՂՈՒԱԾԸ**

1750. Էջմիածինի կաթողիկոսութեան ներքև եղող արքեպիսկոպոսներն են։ Ա. Երևան, որուն եպիսկոպոսներն են, Առինջ. Եղիվարդ, Մուղնի, Սաղմոսավանք, Գօշավանք, Յովհաննավանք, Գեղարդ, Տփղիս, Մաղարդավանք, Վարդինայր, Խոյ, Կարբի, Աղջոցվանք և Գետարգել, իսկ պատուակալ արքեպիսկոպոսարաններն են, Խորվիրապ, Ուշի և Բաղէշ, բովանդակ 18 աթոռ։ Բ. արքեպիսկոպոսարան Բջնի, եպիսկոպոսարաններ՝ Կեչարիսվանք, Գեղարքունի, Շողագավանք և Սևան, 5 աթոռ։ Գ. արքեպիսկոպոսարան Հաղբատ, եպիսկոպոսարաններ՝ Գորի, Հաղարծին և Մակարավանք, պատուակալ արքեպիսկոպոսարան, Մաքենոցավանք, 5 աթոռ։ Դ. արքեպիսկոպոսարան Կարմիրվանք, եպիսկոպոսարաններ՝ Կապոյտվանք, Հերմոնիվանք, և 3 անբացատրելի անուններ, 6 աթոռ։ Ե. արքեպիսկոպոսարան Սուրբ Նախավկայ, եպիսկոպոսարաններ՝ Աստապատ և Նախիջևան, պատուակալ արքեպիսկոպոսարաններ՝ Ագուլիս, Սանահին և Շամախի, 6 աթոռ։ Զ. արքեպիսկոպոսարան Մակու, եպիսկոպոսարաններ՝ Խոյ, Ուրմիա, Մարաղա և Սալմաստ, և անբացատրելի անուն մը, 6 աթոռ։ Է. արքեպիսկոպոսարան Տաթև, եպիսկոպոսարաններ՝ Մեղրի, և 3 անծանօթ, պատուակալ արքեպիսկոպոսարան Ֆահրապատ, 6 աթոռ։ Ը. արքեպիսկոպոսարան Ասպահան, եպիսկոպոսարաններ Փարիա, և 3 անծանօթ, պատուակալ արքեպիսկոպոսարան Շիրուան, 6 աթոռ։ Թ. արքեպիսկոպոսարան Վան, եպիսկոպոսարաններ՝ Արճէշ, Խլաթ, Կտուց, Լիմ, Ոստան, Խիզան և Աղբակ, 8 աթոռ։ Ժ. արքեպիսկոպոսարան Աղթամար, որ [illegible], եպիսկոպոսարաններ 3 անբացատրելի և ուրիշ անծանօթներ, ընդամէնը 6 աթոռ։ ԺԱ. արքեպիսկոպոսարան Ամիդ, եպիսկոպոսարաններ՝ Ակլ, Արղնի, Բալու, Եդեսիա, Չերմիկ, Մերտին, Չնքուշ և Թուլկուրան, 9 աթոռ։ ԺԲ. արքեպիսկոպոսարան Խարբերդ, եպիսկոպոսարաններ՝ 4 անծանօթ, 5 աթոռ։ ԺԳ. արքեպիսկոպոսարան Մուշ, եպիսկոպոսարաններ՝ Մատնավանք և Բաղէշ, 3 աթոռ։ ԺԴ. արքեպիսկոպոսարան Կարին. եպիսկոպոսարաններ՝ Ս. Աստուածածին որ է Հինձք, Ծինիս և Մամրուան, պատուակալ արքեպիսկոպոսարան Դերջան, 5 աթոռ։ ԺԵ. արքեպիսկոպոսարան Սեբաստիա, եպիսկոպոսարաններ՝ Ածպտեր, Անդրէս և Ս. Հրեշտակապետ, 4 աթոռ։ ԺԶ. արքեպիսկոպոսարան Կեսարիա, եպիսկոպոսարաններ՝ Ս. Աստուածածին և 1 անբացատրելի, 3 աթոռ։ ԺԷ. արքեպիսկոպոսարան Եւդոկիա, եպիսկոպոսարաններ՝ Նազիանզ, Մարսուան և Նէոկեսարիա, 4 աթոռ։ Որով Էջմիածինի կաթողիկոսութեան ներքև կ'ըլլան 105 աթոռներ։ Դիտելի է որ քանի մը անուններ, ինչպէս Խոյ ու Բաղէշ, երկու անգամ յիշուած կը գտնուին, երբէ աղաւաղումները տարբեր կերպով մեկնուելու չեն։ Սոյն կաթողիկոսութեան ներքև նշանակուած աթոռներուն սկզբնաւորութեան ժամանակներն ալ նշանակուած են, և ըստ այսմ կաթողիկոսութեան ալ սկիզբը ԺԳ դար բռնուած է։ Արքեպիսկոպոսարան-

ներն են, Կոստանդնուպոլիս, որ պատրիար-քական աթոռներ կը դասուին՝ ԺԳ դար, Երուսաղէմ ԺԲ դար պատրիարք չէ ըսուած, Բերիա՝ ԺԴ դար, Թեսաղոնիկէ՝ ԺԳ դար, Կիպրոս՝ ԺԲ դար, և Տարսոն՝ ԺԳ դար, Եպիսկոպոսարաններն են, Անարզաբա, Ատանա, Մոպսուեստիա, Թիանա, Նէոկեսարիա, և Անկիւրիա, բոլորն ալ ԺԳ դար, ընդամենն 12 աթոռ։ Այս տեղ ալ դիտելի է որ Էջմիածնական աթոռներու կարգին յիշուած էին արդէն Նէոկեսարիա և Անկիւրիա։ Ցուցակին վերջը նշանակուած են ինչ ինչ եպիսկոպոսարաններ, որ անծանօթ են կամ [illegible] են (ՊէՆ. Ա. 823), և յառաջ կը բերուին 25 անուններ մասամբ անբացատրելի, որոնց մէջ ծանօթ կը գտնենք Բաձրբերդ, Կապան, Մաշկեւոր, Բասէն, Կոլխտար, Օծոպ, Մարաշ, Բաբերդ, Նիրկերտ, Ճապաղջուր, Մեծկերտ, Կարս, Կոկիսոն, Այաս, Ծամնդաւ, և Խորձեան, որ կը ցուցնէ թէ զանազան կողմերու աթոռներ են։ Ըստ այսմ աթոռներուն բովանդակ թիւը կը հասնի 144'ի, երկու կաթողիկոսութիւններն ալ միատեղ։ Հարեւանցի դիտողութեամբ ալ կը տեսնուի, որ շատ թեթեւ կերպով կազմուած ցուցակ մըն է, արքեպիսկոպոսներուն և իրենց եպիսկոպոսներուն աշխարհագրական դիրքերը միշտ չեն համապատասխաներ, և կրկնուած անուններ կան, ինչպէս դիտել տուինք։ Յատուկ նահանգ մըն ալ կազմուած է Լատինացւոց Հայոց անունի ներքեւ, և հինգ պատուակալ արքեպիսկոպոսարաններու անուններ կը յիշուին, որք են. Նախիջեւան, Կաֆա, Մարաղա, Տփղիս և Սուլթանիէ, բայց առաջինէն զատ միւս չորսերը ջնջուած կ'ըսուին (ՊէՆ. Ա. 823)։ Աւելի չենք ուզեր երկարել ցուցակիս ուսումնասիրութեան վրայ, բաւական սեպելով մտադրութիւն հրաւիրել Աղթամարի կաթողիկոսութիւնը չընդունելուն, և Կ-Պոլսոյ ու Երուսաղէմի պատրիարքութիւնները Սիսի աթոռին ենթարկելուն վրայ։ Այդ տեսութիւնները չենք կրնար իբր հաստատուն կացութիւն ընդունիլ, այլ միայն նոյն ժամանակին տիրող խառնակ դիրքին վերագրել, և տեղի ունեցող հակաթոռութեանց հետեւանք ըսել, ինչպէս մինչեւ հիմայ պատմուածներ և առաջիկային պատմուելիքներ յայտնի կը ցուցնեն։

**ԵՂԻԱԶԱՐԻ ՆՊԱՏԱԿԸ**

**1751.** Ոսկանի անձին պատկանող տեղեկութիւնները լրացնելու համար, պարտաւորուեցանք ժամանակագրական կարգը առջեւ մղել մինչեւ 1674. այժմ պարտաւոր ենք տասը տարիով ետ դառնալ պատմելու համար հակաթոռութեան շփոթութիւնները, որուն հաւասարապէս խառնուեցան Էջմիածինի, Սիսի, Երուսաղէմի և Կ-Պոլսոյ աթոռները։ Այդ կացութեան առիթ տուաւ նուիրակներու անտեղի ընթացքը, ինչպէս արդէն ակնարկած ենք (§ 1742), որ և զօրաւոր պատճառանք մը դարձաւ Եղիազար Այնթապցիին ձեռքը։ Սա վերջին անգամ եկած էր Երուսաղէմ, իբրեւ ընդհանուր վերակացու և գործակալ Աստուածատուր պատրիարքի փոխանորդագրով, տիրացած էր Ս. Յակոբայ վանքին, և սկսած էր ընդարձակել և պայծառացնել Երուսաղէմի աթոռը, նորոգութիւններով և նոր շինութիւններով (§ 1639)։ Նոյն խակ Աստուածատուրի Կ-Պոլսէ Երուսաղէմ գալէն ետքը, գործառնութեանց տէրը միշտ Եղիազար էր, որուն աչքին պատրիարքական աթոռներն ալ յագեցուցիչ չէին, հետուէ հետու աւելի բարձր ծրագիրներ կ'որոճար, և անոր համար իր անձնականէն ալ կը ծախսէր Երուսաղէմին աւելի փայլ աւելցնելու համար։ Զաքարիայի պատմութեամբ Եղիազար Էջմիածինէ ալ քաջալերութիւններ առացած էր իր գաղափարին, երբ զի քանի մը միաբաններ գլխաւորութեամբ Ոնոփրիոս Երեւանեցի վարդապետին, գրեցին բողոք հայհոյանօք [illegible] Յակոբ կաթողիկոսի վրայ, և Եղիազարը հրաւիրեցին, թէ ել է [illegible] Էջմիածնի, և Ոնոփրիոս ալ հրաւիրակ գնաց, նամակին ետեւէն (ԶԱՔ. Բ. 71)։ Իսկ Եղիազարի և Ոնոփրիոսի մտերմութեան սկիզբը պէտք է տանիլ այն ժամանակին, որ Եղիազար Արղնի կը մնայր, և Ոնոփրիոս ալ Ամիդ նուիրակ էր եկած, և քաղաքացւոց խնդրանօք Ամիդի եպիսկոպոս ձեռնադրուած։ Ոնոփրիոս կանուխէն Ամիդէ ալ Էջմիածին նախատական գիրեր էր գրած կաթողիկոսին և միաբանութեան դէմ, որոնք այն ա-

տեն անհետեւանք մնացին (ԶԱՔ. Բ. 67), բայց մէջ տեղ ելան երբոր իւր [illegible] գործերուն համար Ամդեցիները [illegible], և ստիպուեցաւ փախչիլ էջմիածին [illegible] Ցինանցն, որուն տարին ճշդուած չէ (ԶԱՔ. Բ. 68)։ Այնտեղ ալ ներկայանալ չի համարձակելով, ուզեց փախչիլ, բայց Կաւակերտի մէջ ձերբակալուելով էջմիածին բերուեցաւ, դատուեցաւ և դատապարտուեցաւ, Յակոբ [illegible], և հրամայեց բանտարկել [illegible]։ Սակայն Ոսկիբերս յաջողեցաւ բանտէն փախչիլ, և Ասպահան ապաւինիլ, և նորէն կաթողիկոսին հետ հաշտուիլ, և էջմիածին դառնալ, ուր կը մնար [illegible] (ԶԱՔ. Բ. 70)։ Այս անգամ ալ վերոյիշեալ գիրը Եղիազարի ղրկելով, ինքն ալ ետեւէն կ'երթայ, սակայն Կարինէ ետ կը դառնայ (ԶԱՔ. Բ. 72)։ Իսկ Եղիազար էջմիածինի մէջ կաթողիկոսանալու դժուարութիւնները նախատեսելով, առանձինն կաթողիկոսութեան ձեւը սկսած էր միտքին մէջ որոճալ։

**ԵՂԻԱԶԱՐԻ ՄՐԱԳԻՐԸ**

1752. Իր այս գաղտնի խորհուրդը առաջին անգամ խոստովանաբար յայտնեց Կիլիկիոյ Խաչատուր կաթողիկոսին, երբ սա 1663'ին Երուսաղէմ ուխտի էր եկած։ Գլխադիրի մատուռին մէջ առանձնանալով անոր յայտնեց, Օսմանեան գաւառները էջմիածինի կաթողիկոսութենէն զատելու խորհուրդը. Կիլիկիոյ աթոռին չդպչելով, և անոր թողլով որչափ ինչ արդէն անոր կը պատկանէր, և մնացածներուն համար նոր կաթողիկոսութիւն մը ստեղծել, և զայն իրեն սեփականել, աթոռն Երուսաղէմի մէջ հաստատելով, և Երուսաղէմի ու Կ-Պոլսոյ պատրիարքութիւնները իրեն ենթարկելով։ Գործին յաջողութեան համար Եղիազար նիւթական միջոցներն ունէր, Երուսաղէմի մէջ գտած թաքուն գանձն ալ մէջն ըլլալով (§ 1730), Երուսաղէմն ալ պատրաստած էր արդէն, էջմիածինի խորհրդաւոր անունով մատուռը շինած ատեն (§ 1739)։ Հայ ազգը չուտով կրնար գրաւել նուիրակներու հանգանակութիւնները և կեղեքումները պատճառելով (§ 1742), և ձրի միւռոն բաշխելով. Լաւվարութեան հովանաւորութիւնն ալ դիւրին էր ստանալ՝ Պարսկաստանի հետ յարաբերութիւնները վերջացնելու փաստով։ Կը մնար եկեղեցական օրինաւորութեան ձեւակերպութիւնը, այս ալ պիտի լրացուէր ճանչցուած կաթողիկոսէ մը օծում ընդունելով, և այդ էր Եղիազարի Խաչատուրէ խնդրած աջակցութիւնը։ Խաչատուր համոզուեցաւ, քանի որ իրեն վնաս պիտի չի հասնէր, էջմիածին պիտի տկարանար, և անշուշտ ծառայութեանը փոխարէն պատշաճ վարձն ալ սակարկուած էր։ Կը մնար օրն ու տեղը որոշել, զոր Եղիազար պիտի պատրաստէր, և Խաչատուր խոստացաւ անոր կոչին պատասխանել և օծումը կատարել, մինչեւ որ նախապատրաստութիւնները լրանան։ Այսպէս 1663 Երուսաղէմի վանքին Գլխադիրի մատուռին մէջ հաստատուեցաւ հակաթոռութեան առաջին խորհուրդը։

**ԵՂԻԱԶԱՐԻ ՁԵՌՆԱՐԿԸ**

1753։ Խաչատուր Երուսաղէմէ իր աթոռը դարձած ատեն հակաթոռներ յարուցանելու միտքին հաշտուած էր, ուստի կամակար գործակցեցաւ Անդրէաս Ասորի վարդապետի մը, որ իւր իսկ կաթողիկոսին դէմ հակաթոռութեան կը հետապնդէր, և կառավարութեան հաւանութիւնն ալ ստացած էր։ Ուստի Խաչատուր Բերիոյ մէջ պէտք եղած ձեռնադրութիւնն ու օծումը տուաւ Անդրէասի, և այս կերպով խռովութիւն և երկպառակութիւն թողուց Ասորւոց մէջ։ Խաչատուրի րրածը Հայերուն ալ տգեղ երեւցաւ և տժգոհութիւններ բարձրացան, գլուխ ունենալով Դաւիթ Բերիացի եպիսկոպոսը, զոր յիշեցինք Երուսաղէմի խնդիրներուն ատեն Կ-Պոլիս պատուիրակ յղուելուն առթիւն (§ 1730)։ Դաւիթ, որ Կարկառեցի ալ կոչուած է, անշուշտ Բերիոյ գաւառին Կարկառ գիւղը՝ իր ծննդավայրն ըլլալէն, Բերիոյ մէջ առաջնորդ կը գտնուէր, ուստի կուսակցութիւն կազմելով ինքն ալ Խաչատուրի հակառակ կաթողիկոսանալու ետեւէ եղաւ։ Կ-Պոլիս գնաց, Յովհաննէս պատրիարքը չահեցաւ, և անոր տեղեկագիրովը հրովարտակ ալ ձեռք ձգեց, և Բերիա դառնալով, ու Ասորւոց կաթողիկոսէն ալ պաշտ-

պանութիւն գտնելով, կաթողիկոս օծուեցաւ և Բերիոյ մէջ հաստատուեցաւ Խաչատուրի դէմ, և կաթողիկոսական իշխանութիւն սկսաւ գործածել։ Այս ամէնը տեղի ունեցաւ 1663 տարին չլրացած։ Խաչատուր խռովի չկրնալով Դաւիթը յաղթահարել ու մերժել, կը պատրաստուի Կ-Պոլիս երթալ, որ այս անգամ ինքն չահի պատրիարքն ու մեծամեծները, և Դաւիթը հեռացնէ, բայց Դաւիթ փութաց ետեւէն համնիլ. և որովհետեւ երկուքն ալ հնչուն փաստերով կը խօսէին, Յովհաննէս Թիւթիւնճի պատրիարք չկրցաւ երկուքն ալ մերժել, եւ առաջարկեց որ Սսոյ կաթողիկոսական վիճակը մէջերնին բաժնեն, եւ իւրաքանչիւրը իւր մասին մէջ ազատօրէն կաթողիկոսութիւն վարէ։ Դաւիթ միշտ բան մը վաստկած կ'ըլլար, իսկ Խաչատուր պէտք ունէր որեւէ կերպով գործը վերջացնել, վասնզի անդիէն ուրիշ կարեւոր գործ մըն ալ կը ստիպէր զինքն Կ-Պոլիսէ մեկնիլ. ուստի համաձայնութիւնը գոյացաւ և խնդիրը փակուեցաւ։ Եղիազար նոր կազմուելիք կաթողիկոսութեան համար Խաչատուրի հետ համաձայնութենէն ետք անգործ չէր մնացած, այլ պէտք եղած գումարները մէկտեղ առնելով եկած Կ-Պոլիս, և Յովսէփ Ամանօղլու Ռոստոմեցի վարդապետը այնտեղ գործակատար թողլով, անմիջապէս անցած էր Եւրոպակողմ, Քէօբրիւլիւօղլու մեծ եպարքոսին ետեւէն, որ 1664 մարտ 20'ին Սէմլին կը գտնուէր՝ Մաճառներու դէմ պատերազմը (ԺՈՒ. 275) պատրաստելու համար։ Մեծ եպարքոսին հետ էր իւր սեղանաւորը Ապրոյ չէլէպի. Եղիազար նախ անոր հետ բարեկամացաւ, և անոր ձեռքով իւր միտքը յայտնեց մեծ եպարքոսին, որուն շատ դիւր եկաւ Տաճկահայերը Պարսկաստան գտնուող աթոռէն զատելու գաղափարը։ Ընծայ և կաշառք փաստին պակասը լրացուցին, և Եղիազարը Տաճկահայոց կաթողիկոս ճանչնալու հրովարտակը տրուեցաւ՝ Երուսաղէմի պատրիարքութիւնն ալ իրր նոյն պաշտօնին յուռեա և նոր կաթողիկոսութեան աթոռ ընդունուեցաւ։ Եղիազար և Ապրոյ համաձայնեցան գործը գաղտնի պահել, և Եղիազար առանց Կ-Պոլիսէ անցնելու շիտակ Բերիա գնաց, պէտք եղած կարգադրութիւններն ընելու։ Նամակով ազդարարեց Խաչատուրի, որ փութայ անմիջապէս Բերիա գալ, և առեն չանցընելու համար, հետեւորդ և կարասի ալ չառնէ, և սուրհանդակներու հետ արագընթաց ճանապարհելով Բերիա հասնի, ծանօթ նպատակը իրագործելու համար։ Այս էր, որ Խաչատուրը կը ստիպէր Կ-Պոլիսէ մեկնումը փութացնել։

1754 Որչափ ալ Խաչատուր արդէն իր գործակցութիւնը խոստացած էր, բայց երբ

ԵՂԻԱԶԱՐ ՀԱԿԱԹՈՌ

գործադրութեան վայրկեանը հասաւ, յանկարծ վարանեցաւ, և կերպով մը խղճիխայթէ ազատուելու համար, ուզեց գաղտնի խորհուրդը քանի մը խելահասներու հաղորդել, որոնց մէջ կար նաև Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան։ Խորհուրդի հրաւիրուածներ զարմացմամբ լսեցին եղածը, և Խաչատուրը յորդորեցին զայն չգործադրել, և վրանին առին Եղիազարն ալ յետս կասեցնել, և նոյնիսկ Քէօմիւրճեանը, որուն Եղիազար վստահութիւն ունէր և իւր մօտ ունենալ ուզած էր, ճանպայ հանեցին Բերիա երթալ, և տաբաղէպ գործը արգելել։ Երեմիա մեկնեցաւ շտապով, Խաչատուր ալ ետեւէն. Երեմիա շատ խօսեցաւ և թախանձեց որ եկեղեցւոյն վրայ այդ դժբախտութիւնը չբերէ, բայց Եղիազար անդրդուելի մնաց՝ եկեղեցւոյն և ազգին մեծ բարիք մը ըրած ըլլալ կարծեցնելով։ Խաչատուրն ալ առիթը կորսնցընել չուզեց, և մեծ եպարքոսին հրամանագիրը իրեն արդարացում առնելով, Երեմիայի խրատներուն ալ չանսաց. [illegible], այսինքն Կիլիկիոյ (ՁԱՔ. Բ. 72), ու Եղիազարի վրայ կաթողիկոսական օծումը կատարեց Բերիոյ Ս. Քառասունք եկեղեցւոյն մէջ, 1664 տարին, բայց օրը նշանակած չենք գտներ (ԹՈՐ. Բ. 464)։ Տեղ մը 1666 գրուած ըլլալը (ԹՈՐ. Բ. 407) գրչագրական սխալանք պէտք է սեպել։ Եղիազար հազիւ կաթողիկոս օծուած՝ օրհնութեան անդրանիկ կոնդակ գրեց և ղրկեց բոլոր Օսմանեան պետութեան մէջ եղող վիճակներուն, Խաչատուրի ենթարկեալ թեմերէն զատ։ Նախապէս սովորական ձեւով օրհնութիւններ շռայլելէն ետքը, կը ծանրանար էջ-

միածինի նուիրակներուն խառութիւններուն և կեղեքումներուն վրայ, և ինքն կը խոստանար բոլոր այդ զեղծումները խափանել, ձրի միւռոն բաշխել, ժողովուրդին բարօրութեան աշխատիլ, Օսմանեան հովանաւորութեամբ գործել, և օտար միջամտութիւնները դադրեցնել։ Իբր կաթողիկոսանալը եպարքոսին ալ հաղորդելով, խնդրեց որ Օսմանեան պաշտօնէից վտարուին Պարսկաստանէ եկող նուիրակները, և բստ այնմ եպարքոսական հրամանագիրներ յղուեցան Սեբաստիա, Կարին, Վան, Ամիդ, և ուրիշ գլխաւոր կուսակալութիւններ։ Վիճակներէն բաւական թուով Եղիազարի յարողներ եղան, բայց ոչ ամէնքը, վասնզի Էջմիածնի Մայրաթոռէն զատուիլը շատերուն ծանր կու գար. Յակոբ կաթողիկոսի անունն ալ սիրելի և պատկառելի մնացած էր, հակառակ իր նուիրակներէն շատերուն անտեղի ընթացքին։ Եղիազարի օծումին կատարումը [illegible] (ՋԱՔ. Բ. 72), և միասին պատրաստեցին գրգռութեան միջոցները (§1751)։ Անկէ ծագեցան հայրապետական իրաւասութեան պառակտումները, և Յակոբեան ու Եղիազարեան կուսակցութեանց կոչումները։ Կաթողիկոսի յիշատակութիւններն ալ վիճակէ վիճակ, քաղաքէ քաղաք և եկեղեցիէ եկեղեցի տարբերեցան բովանդակ Թուրքիոյ մէջ։ Արդէն Կիլիկիա ալ բաժնուած էր Խաչատուրի և Դաւիթի մէջ, Աղթամարն ալ կանուխէն իրեն սեփական իրաւասութեան վիճակներն ունէր։ Եթէ մաս մը վիճակներ շահած ըլլալն ալ Եղիազարի համար յաջողութեան սկզբնաւորութիւն մըն էր, սակայն մեծ ձախողուած եղաւ Երուսաղէմ չկարենալ մտնելը, զոր իբր կեդրոն քրիստոնէութեան՝ իրեն ոթոռանիստ որոշած էր ընել։

**1755**. Երբոր Եղիազար 1659'ին Ս. Յակոբայ վանքին տիրացաւ (§ 1735), ամէն կողմ Երուսաղէմի նուիրակներ հանած էր, և անոնցմէ մէկն էր, Սարգիս եպիսկոպոս Թէքիրտաղցի,

ՍԱՐԳԻՍ ԹԷՔԻՐՏԱՂՑԻ

Աստուածատուր պատրիարքի աշակերտ, կամ որ նոյն է Երուսաղէմի միաբան, որուն վիճակեցաւ երթալ Կաֆայի շրջանակը, և արդիւնաւոր նուիրակութիւն ալ ունեցաւ, բայց Երուսաղէմ դառնալուն քիչ արդիւնք ներկայեց։ Եղիազար կասկածեցաւ և Սարգիսի պատած քաղաքներէն ճիշդ հաշիւներ բերել տուաւ. և Սարգիս ստիպուեցաւ պարտքը ճանչնալ, և վճարումը պարտամուրհակներով երաշխաւորել։ Եղիազար պարտագիրները կէս գինով այլազգիներու փոխանցեց, որոնք սկսան Սարգիսը նեղել, որ 1663'ին Կ-Պոլիս անցաւ միջոց ճարելու և պարտատէրները գոհացնելու համար. բայց երբ չյաջողեցաւ, պարտատէրներու բողոքին վրայ բանտարկուեցաւ։ Հոն իրեն բանտակից գտաւ Ղազար Սեբաստացին, զոր Յովհաննէս Թութունճի պատրիարքը բանտարկել տուած էր, պատրիարքութենէ գահընկէց ըլլալէն ետքը (§1741)։ Մօտաւորապէս տարի մը իրարու հետ ապրեցան, բարեկամացան, և խորհրդակցութիւններ կազմեցին իրենց ոսոխներուն դէմ։ Առաջ Ղազար ազատեցաւ իւր կողմնակիցներուն միջնորդութեամբ. իսկ Սարգիս նոյն իսկ իւր պարտատէրներէ նպաստաւորուեցաւ, որոնք նոր փոխատուութիւններով իւր պատրիարքութիւնը յաջողցուցին, որպէսզի այս կերպով հին ու նոր պարտքերը միանգամայն վճարէ։ Սարգիս բանտէ ելլալով Ադրիանուպոլիս գնաց եպարքոսին ետեւէն, և պատրիարքութեան հրովարտակն առնելով Կ-Պոլիս դարձաւ, Յովհաննէսը վտարեց, և պատրիարքարանին տիրացաւ 1664ին։ Ճիշդ այդ միջոցին էր որ Եղիազար կաթողիկոսական օծում առած էր Բերիոյ մէջ, և Երուսաղէմ կ'ուզէր մտնել յաղթանակով, որուն պատրիարքութեան իրաւունքն ալ տուած էր հրովարտակով։ Աստուածատուր պատրիարք և Երուսաղէմի միաբաններ չուզեցին ճանչնալ Եղիազարի պատրիարքութիւնը, իրենց կողմը շահեցան Երուսաղէմի կուսակալ Էմիրհաճ փաշան, Կ-Պոլսոյ պատրիարքութեան ալ դիմեցին, որ Սարգիս Թէքիրտաղցիին էր անցած, և որ Եղիազարի մեծ հակառակորդն էր. սա բոլոր իւր իշխանութիւնը գործածեց, որպէսզի Եղիազարի տրուած Երուսաղէմի պատրիարքութիւնը ջնջուի (§1754), և Աստուածատուրի պատրիարքութիւնը վերահաստատուի։ Եղիազար այդ արգելքներուն պատճառով Երուսաղէմ

*երթալ չհամարձակեցաւ, և աթոռանիստ տեղ չունենալուն՝ թափառական կը շրջէր Եգիպտոս, Դամասկոս, Անտիոք և Բերիա, որպէսզի իր կողմը զօրացնէ և Երուսաղէմի տիրանայ։*

**1756**. *Եղիազարի մէջտեղ նետած հակաթոռ կաթողիկոսութիւնը, բոլոր Հայութիւնը տակնուվրայ ըրաւ, և ներհակընդդէմ կիրքեր զօրացան, թշնամութիւններ աճեցան, կաշառքներ յորդեցին, գայթակղութիւնն և բարեկոնական խռովութեան վիճակը գագաթնակէտը հասաւ։ Եղիազարի դէմ մաքառողներէն աւելի ճիգ թափողն եղաւ Մարտիրոս Կաֆացի, որ երբեմն Եղիազարի բարեկամն էր, բայց վերջին անգամ իրեն չօգնելէն ցաւած, Էջմիածին էր անցած, և Ղրիմու եպիսկոպոս եղած* (§1740)։ *Անմիջապէս Կաֆայէ մեկնեցաւ Եղիազարի դէմ պայքարին գլուխն անցնելու համար. ուր որ հանդիպեցաւ ամէն տեսակ նախատինքներով և ամբաստանութիւններով ջանաց զայն անուանարկել։ Եւդոկիա հասած ատեն, հոն տեսաւ Եղիազարի անդրանիկ կոնդակը, և անկէ առիթ առնելով չարաչար քննադատեց, և բածները գիրի առնելով՝ նամակի ձևով Եղիազարի յղեց, երբ տակաւին Բերիա կը գտնուէր. և որպէսզի Եղիազար զայն բանայ, պատուաւոր հասցէ դրաւ վրան,* Կաթողիկոս Հայաստանեայց *վերտառութեամբ։ Անկէ շտապով Էջմիածին անցաւ Յակոբ կաթողիկոսը գրգռելու, և բոլոր Եղիազարի հակառակորդներուն կողմէ խօսեցաւ։ Մարտիրոս հասած էր* յաւուրս պահոց Յայտնութեան (ՋԱՔ. Բ. 73), *որ է ըսել 1665 տարեգլխին։ Նախապէս հաշտուելով Յովհաննէս Մուղնեցիի հետ, որուն պատրիարքութենէն հանուելուն գրգռիչն էր եղած* (§1729). *անոր ձայնակցութեամբ կաթողիկոսը յորդորեց, որ միասին Կոստանդնուպոլիս երթան, և հայրապետական ազդեցութեամբ և ժողովրդական համերաշխութեամբ Եղիազարը կործանեն, և հակաթոռութեան հերձուածը խափանեն։ Յակոբ առաջիկային ուղևորութեան առաջարկը գործադրելու խոստմամբ, Մարտիրոսին յանձնարարեց առաջուընէ Կ-Պոլիս երթալ, և պէտք եղած միջոցները ձեռք առնել, Եղիազարի հակաթոռութիւնը խափանելու համար։ Իսկ ինքը ջանաց շրջաբերական նամակներով ժողովուրդը հակաթոռութեան աղտէն՝ զգուշացընել, Մայրաթոռոյ իրաւունքները պաշտպանել, Հայաստանեայց կաթողիկոսութեան նուիրականութիւնը բարձրացնել, և ամէնքը միութեան և սիրոյ յորդորներով զօրացնել։ Նոյնինքն Եղիազարի ալ գրեց իր ձեռնարկին վնասները պարզելով, և յանուն եկեղեցւոյ երդմնեցուցանելով՝ սիրայորդոր խրատներ ուղղեց։ Յովհաննէս Արղնեցի վարդապետն ալ, որ իմաստուն և զգօնամիտ մարդու համբաւ կը վայելէր, իբրև միջնորդ և պատուիրակ ճամբայ հանեց, հանդիպած տեղերը խրատել, և Եղիազարին մօտ ալ երթալով՝ պէտք եղածը խօսիլ և կարգադրել։*

ՀԱԿԱԹՈՌՈՒԻՆ ԴԻՄԱԴՐՈՂՆԵՐ

**1757**. *Ընդհանուր շփոթութեան կացութիւնը նկարագրելու համար, բաւական ըլլայ մայրաքաղաքին վիճակին վրայ ամփոփ գաղափար մը տալ, ուր հասաւ Կաֆացին 1665'ին առաջին ամիսները, և Եղիազարի դէմ շարժումին գլուխ կանգնեցաւ։ Այդ նպատակով անխտիր ամէն բաժիններու հետ միացաւ, բաւական էր որ Եղիազարի դէմ վարուելիք պայքարին օժ տային։ Այդ մասին յառաջընթաց կը գտնուէին Պարսկահայ գաւառներէ գաղթողներ, որոնց գլխաւորներն էին Խուրէլ և Միրզա մեծահարուստ իշխանաւորներ* (§ 1742), *որք սովորաբար Ջահուկեան կը կոչուէին, երկու գլխաւորներուն ծննդավայր՝ Նախիջևան գաւառի Ջահուկ գիւղին անունով* (ՋԱՔ. Բ. 72)։ *Կային և Պարսկահայ գաւառներու սահմանակցութենէն ու Հայաստանի ներքին կողմերէն վերջին ատեններ գաղթողներ, որոց համանգամայն Արևելցի անուն կը տրուէր։ Թըլթըլ երէցին կուսակիցներն ալ, որոնք լատինասէր սկզբունքներու հետևողներ էին, Եղիազարի դէմ միացան, որուն կանուխէն հակառակորդներն էին։ Թըլթըլեան խումբը ընդհանրապէս ստորին դասակարգի անձերէ կազմուած էր, ինչպէս հռոմէականութեան պաշտպաններն ալ կ'ընդունին, խոստովանելով թէ Կաֆացին* [illegible]

Կ-ՊՈԼՍՈՅ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

[illegible] (ՁԱՄ. Գ. 702)։ *Սակայն Կաֆացիին նպատակին ասոնք ալ կը ծառայէին, և թերևս աւելի ալ օգտակար էին յուզմունքներ գրգռելու համար։ Կաֆացին իրեն կողմ ձգեց Ղազար Սեբաստացին ալ իր Տիվրիկցիներով, որ բոնոտէն ազատելէն ետքը նորէն պատրիարքութեան տիրանալու հետամուտ էր, և Կաֆացիին կը խոստանար՝ Երուսաղէմի գործակալութիւնը անոր թողուլ։ Սարգիս պատրիարք արդէն իսկ Եղիազարի հակառակորդ էր, բայց իւր ազդեցութիւնը տակաւ նուազած էր, հին և նոր պարտքերը (§ 1755), և անոնց դիզուած տոկոսները վճարել՝ և այլազգի պարտատէրներուն ձեռքէն ազատիլ չկրնալուն համար։ Այս պատճառով ստէպ թաքչելու և չերևնալու կը ստիպուէր՝ պատրիարքարանի գործերը թողլով, կանուխէն իր աշակերտակից և հաւանաբար Թէքիրտաղցի Յովհաննէս վարդապետի մը ձեռքը, զուցէ նոյն ինքն Ամանօղլուն (§1753), որ կ'երևի վերջէն Եղիազարի հակառակ դարձած էր։ Այդ զանազան բաժիններ, Կաֆացիին գրլխաւորութեան ներքև միացած, միաձայն կերպով Եղիազարի կործանման կ'աշխատէին, Էջմիածինի աթոռին և Յակոբ կաթողիկոսին իրաւունքը պաշտպանելով։ Կաֆացին անձամբ թաղէ թաղ և եկեղեցիէ եկեղեցի կը վազէր, ամէն տեղ Եղիազարի գործերը կը պախարակէր, կեանքը կը խայտառակէր, և ձեռնարկը դատապարտող քարոզներ կը խօսէր։ Սակայն Եղիազարն ալ իւր պաշտպաններն ունէր, և այս խումբը կը կազմէին ընդհանրապէս Հռոմցիներ, անուն մը որ ոչ Հռոմի և ոչ Հռոմէներու հետ առնչութիւն ունէր, այլ իր ծագումը կ'առնէր առաջակողման Ասիայի կամ Անատոլուի՝ Հռոմաստան կոչուելէն. և այս անունն ալ գործածական եղած էր Սելճուքեան թագաւորութեան՝ Իկոնիոյ սուլտանութիւն կոչուած ըլլալէն։ Այս խումբը կը կազմուէր ընդհանրապէս հինէն Կ-Պոլիս հաստատուած կամ մերձաւորագոյն գաւառներէն մայրաքաղաք փոխադրուող Հայերէն, որոնք նուազ համակրութիւն կը զգային դէպի հեռաւոր Էջմիածինը, և սատրիկ զգուած էին Էջմիածինի նուիրակներէն։ Կաֆացին կը պնդէր անոնց տկար փոքրամասնութիւն մը ըլլալը, և անոնք ալ Կաֆացին լռեցնելու համար, մինչև իսկ սպառնական գիրեր սփռելու միջոցներուն դիմեցին։ Եղիազարեաններուն գլխաւորն էր Ապրոյ Չելէպին, որ անոր կաթողիկոսութիւնն ալ յաջողցուցած էր (§ 1753), և Ապրոյի՝ մեծ եպարքոս Քէօբրիւլիւօղլուին մօտ լաւ ազդեցութիւն վայելելը՝ Եղիազարի և Եղիազարեանց վստահութեան հիմնակէտն էր։*

**ԵՂԻԱԶԱՐ ԹԱՓԱՌԱԿԱՆ**

**1758**. *Եղիազար տակաւին Բերիա եղած ատեն ստացած էր Կաֆացիին յանդիմանական և նախատական գիրը (§ 1756), և զայն հրապարակաւ կարդացած էր՝ հակառակ Քէօմիւրճեանի և իւր աշակերտներէն Սուքիաս վարդապետի դիտողութեանց, մեծանձնութիւն ցոյց տալու կերպով մը։ Երուսաղէմ չկրնալով երթալ, թափառայած կը շրջագայէր (§ 1754), և զանազան քաղաքներ հանդիպած ատեն (§ 1755), ստէպ կը պարտաւորուէր ծպտիլ իբր վաճառական կամ իբր այլազգի իշխանաւոր կամ ուրիշ տարազով, որովհետև հակառակորդները գաւառներու կուսակալներն ալ կը գրգռէին իրեն դէմ զանազան պատրուակներով, և ասոնք ալ խնդրակներ կը հանէին զայն ձերբակալելու համար։ Բաւական ամիսներ անցուցած էր Եղիազար այդ կերպով, երբ 1665 ապրիլին Յոպպէէ խառնուեցաւ Եգիպտոսէ եկող կարաւանի մը, բայց Համա հասած ատեններն զինքն ճանչցող գտնուեցաւ, և պարտաւորուեցաւ խոյս տալ օթևանէն։ Պէյլանի մէջ հանդիպեցաւ Քէօմիւրճեանի և Դաւիթի, որոնց դիտողութիւններուն հանդէպ ապագայ ակնկալութիւններ և յաջողութիւններ կը յուսադրէր վստահօրէն։ Նորէն ծպտեալ տարազով, և արընթափ գնացքով ճանպան չարունակեց, մինչև հասաւ Պրուսա, միտք ունենալով Ադրիանուպոլիս անցնիլ և Քէօբրիւլիօղլուին դիմել. և այսպէս ալ կանխեց լուր հասցնել Ապրոյի, որպէսզի պէտք եղած կերպով եպարքոսին միտքը պատրաստէ։ Այս առթիւ եպարքոսական կարգադրութեամբ Ադրիանուպոլսոյ մէջ ազգային գործոց համար մեծ ատեան մը բացուեցաւ։*

*Յովհաննէս Թութիւնճին, պատրիարքութենէ ելնելէն ետքը (§ 1755), Թըլթըլեաններուն գլխաւորներէն երկու հոգի առած մեծ եպարքոսին ետեւէն էր գացած մինչեւ Սերպիոյ Պելկրատը, և Մաճառաց դէմ պատերազմին առթիւ անոր տեղափոխութեանց հետեւած, առանց արդիւնք մը ձեռք ձգելու, մինչեւ որ պատերազմին վերջանալուն եպարքոսին ետեւէն Ադրիանուպոլիս եկած՝ այնտեղ կը դեգերէր։ Մարտիրոս Կաֆացին ալ Ադրիանուպոլիս եկած էր Յակոբեան կուսակցութենէ չատերու հետ, որ Եղիազարի կաթողիկոսութիւնը տապալէ և Աստուածատուրի պատրիարքութիւնը վերահաստատել տայ արքունի հրովարտակով, որուն հետ կապուած պիտի ըլլար իւր փոխանորդութիւնը։ Սարգիս Թէքիրտաղցին տեսնելով որ իւր պատրիարքութեան վտանգ կը սպառնար Թութիւնճիին կողմէ, հարկ սեպած էր ինքն ալ Ադրիանուպոլիս երթալ, որպէսզի իւր աթոռը պաշտպանէ։ Այդ միջոցին կը հասնէր Եղիազար Այնթապցին ալ, որպէսզի նոր հրովարտակներով և նոր զօրութիւնով իրականացնէ իւր նպատակը, և օծումով ու անունով ստացած կաթողիկոսութեան իսկական դիրք մը տայ՝ Երուսաղէմի մէջ տիրաբար հաստատուելով։ Այդ խառնակ կացութեան լուծումն էր որ եպարքոսէն կը սպասուէր, և որուն վրայ ներհակ խորհուրդներով կը ճնշէին Ապրոն՝ որ Եղիազարի պաշտպանն էր, և եպարքոսութեան աւագ պաշտօնեայն՝ որ Կաֆացիէ շահուած էր։ Եպարքոս կանոնաւոր ատեան ալ կազմեց, Կաֆացիին կողմէ Եղիազարի դէմ եղած ամբաստանութիւնները լսելու, ինչպէս են Աստուածատուր պատրիարքէ 200 քսակ արծաթ դրամ առնելով ուրիշ նպատակի գործածելը, բնէ Հայ եղած չըլլալը, և անհրաման եկեղեցիներ շինած ըլլալը։ Սակայն եպարքոս Ապրոյէ խրատուած, ճարտար դարձուածներով ամբաստանութիւնները ջրեց, և Եղիազարի կաթողիկոսութիւնը հաստատեց, և միւս կողմն ալ չկտրելով՝ Աստուածատուրի պատրիարքութիւնն ու Մարտիրոսի փոխանորդութիւնն ալ հաստատեց Երուսաղէմի վրայ։ Արդիւնքը Մարտիրոսը գոհացուց, որ հրամանագիրները առնելով փութաց Երուսաղէմ, իսկ Եղիազար չկրցաւ գոհ մնալ, զի առանց Երուսաղէմի իւր կաթողիկոսութիւնը՝ նշանակութիւն պիտի չունենար։ Իսկ Յովհաննէսի և Սարգիսի խնդիրին մէջ՝ Եղիազար և Ապրոյ ալ Սարգիսի դէմ զինուեցան, պէտք եղած կաշառքներն ալ առատօրէն տրուեցան, և պատրիարքութիւնը հաստատուեցաւ Յովհաննէսի վրայ, որ չուտով եկաւ պատրիարքարանի տիրել, և Սարգիս յուսախաբ մնաց բոլորովին։ Այդ եղելութեանց ժամանակը դէպ է նշանակել 1665 տարւոյ մայիսի վերջերը։*

**1759.** *Յակոբ կաթողիկոս, որ անմիջապէս Կաֆացին ճամբայ հանած էր ձմեռօրով (§ 1756), ինքն ալ շատ չուշացուց իր ուղեւորութիւնը, և զատիկն ընելով, որ 1665 մարտ 26'ին կը հանդիպէր, որոշեց մտադրութիւնը կատարել։ Զաքարիա կը յիշէ թէ Յակոբ կաթողիկոս կանուխէն ալ Կ-Պոլիս երթալու միտք մը ունեցած էր, և Սահակ Մակուեցի եպիսկոպոս* «սպանեալ եւ խեղդեալ» *նշանակելով՝ մինչեւ Ուդոկիա ալ եկած էր, բայց Ոսփրիսի կուսակցութեան հանած չփոթներուն պատճառով ստիպուած էր ետ դառնալ էջմիածին (ԶԱՔ. Բ. 72). իսկ Կաֆացիին գալէն ետքը հարկ տեսաւ ուղեւորութիւնը փութացնել։ Սոյն առիթով* ժողովեցան ամենայն առաջնորդք վանորէից, եպիսկոպոսք եւ վարդապետք, եւ հարք եւ անապատականք, եւ աշխարհականք որք երեւելիք, եւ մեծամեծ քահանայք ուղարկեցին ճանապարհին *(ԶԱՔ. Բ. 73)։ Այս անգամ էջմիածինի մէջ տեղապահ մնացող եպիսկոպոսը Մատթէոս եղած պէտք է ըլլայ, որ* սպանեալ *անունով յիշուած է սոյն բացակայութեան միջոցին (ԶԱՔ. Բ. 76)։ Ճանապարհորդութեան նպատակակէտը Կոստանդնուպոլիս էր, բայց Յակոբ լաւագոյն սեպեց նախ չեզոք տեղ մը իջնալ, և այնտեղէն որոշել ընելիքը, կացութիւնը կշռելէն ետքը։ Այդ դիտմամբ չիտակ եկաւ Զմիւռնիա, և հոն հասաւ երբ արդէն տրուած էին Ադրիանուպոլսոյ մէջ եպարքոսական վճիռները, և Մարտիրոս գացած էր Երուսաղէմ (§ 1758)։ Իսկ Եղիազար տակաւին Ադրիանուպոլիս կը դեգերէր, զի առանց Երուսա-*

ՅԱԿՈԲ ԵՐՈՒՍԱՂԷՄ

ղէմի վրայ իշխանութեան՝ այնտեղ երթալ չէր կրնար։ Յակոբի նպատակը յայտնի ըլլալուն, դժուար է հաւատ ընծայել՝ երթուլ է Հասան, բօյս ալէքսունէ երթուլ՝ բառերուն (ՊԼՃ. 277), մանաւանդ որ Զմիւռնիա համնելուն պէս հրաւէր ստացաւ Երուսաղէմէ, որով Աստուածատուր և Մարտիրոս կը ծանուցանէին, թէ Երուսաղէմի տիրացած են, և այդ կողմէն Եղիազար տկարացած է, եթէ գայ, միասին կը խորհին Եղիազարի կաթողիկոսութիւնն ալ խափանել տալ, զոր այլեւս դժուարին չէին կարծեր։ Այդ առաջարկին վրայ Յակոբ որոշեց ուղիղ Երուսաղէմ երթալ, և ուր տեղէ որ անցաւ, մինչ համակրութեան նշաններ և ձեռնտուութեան նպաստներ կը ստանար, ինչպէս որ էջմիածինէ Զմիւռնիա եկած ատենն ալ ստացած էր։ Եղիազար Ադրիանուպոլսոյ մէջ Ապրոյի միջնորդութեամբ կը շարունակէր Երուսաղէմի պատրիարքութեան հրովարտակն ալ ստանալ, սակայն Քէօբրիւլիւօղլուն այս անգամ պինդ մնաց Աստուածատուրի անունին տուած հրովարտակին վրայ, որուն պաշտպանն էր իւր աւագ պաշտօնեայն (§ 1758), այնպէս որ Եղիազարեաններէն շատեր, առանց Երուսաղէմի ալ Օսմանեան երկիրներու կաթողիկոսութեամբ գոհանալու կողմն էին։ Սակայն Եղիազար կը պնդէր. Ո՞ւր ալա հասարակեցէ ընոր կաթողիկոսութեանը։ Ասպրոն անտանելի կացութենէն ելնելու համար մտածեց պատրիարք կոչումի վրայ չպնդել, որ Աստուածատուրի վրայ հաստատուած էր, և եպարքոսը փոխել չէր ուզեր, այլ նոյնը և մինչև-վերջ կոչումներով գոհանալ, որոնք բաւական էին Երուսաղէմի ստացութեանց և մատակարարութեանց տիրանալու, անգործութեան վերածելով Աստուածատուրի պատրիարք կոչումը։ Եղիազար ստիպուեցաւ այդ ձեւին համակերպիլ, ոչ միայն պատրիարք կոչումը ստանալու անհնարութեան համոզուելով, այլեւ վախնալով որ եթէ ուշանայ, մի՛ գուցէ Երուսաղէմի մէջ իւր թաքուցած դրամները հակառակորդներուն ձեռքը իյնան։

**1760**. Եղիազար Տաճկաստանի կաթողիկոսութեան համար նոր հրովարտակը և Երուսաղէմի գործակալութեան համար պաշտօնագիրը ստանալով՝ փութաց Ադրիանուպոլիսէ Ռոտոսթոյ իջնալ և անկէ Պրուսա անցնիլ, չիտակ Երուսաղէմ

ԵՂԻԱԶԱՐ Ի Կ-ՊՈԼԻՍ

երթալու նպատակով։ Բայց Եղիազարի հակառակորդներ, և գլխաւորապէս Թըլթըլեաններն ու Ջահուկեանները բողոք մատուցանելով թէ Եղիազարի հետ դատ ունին, հրաման հանեցին զայն բռնի Կ-Պոլիս բերելու, և իրենցմէ երկուքը Սիմոն Պօտուր և Պօղոս Ասերօղլու ոստիկաններու ընկերակցութեամբ Պրուսա յղեցին, որոնք գիշերայն տանիքը քակելով Եղիազարը ձերբակալեցին։ Տեղւոյն կուսակալը դէմ դարձաւ առանց իրեն կատարուած գործին, և Եղիազարը ձեռուըներէն առաւ. անոնք ալ Եղիազարի հետեւորդներէն Ոնոփրիոս (§ 1754) և Սարգիս վարդապետները ձերբակալելով կապանօք Կ-Պոլիս բերին, ուր Եղիազարեանք յաջողեցան վարդապետները ազատել, և Եղիազարի դէմ խօսուածները հերքել։ Այսուհանդերձ հարկ եղաւ որ Եղիազար Կ-Պոլիս գայ իւր գործը վերջնականապէս կարգադրելու համար, ինչպէս որ ալ եկաւ, և Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին նստաւ, և շարունակ քարոզելով աւելի եւս ժողովրդականութիւն ստացաւ և կողմնակիցներ շատցուց։ Ուրիշ թաղերու եկեղեցիներէն ալ հրաւէրներ կը ստանար, և վերջէն փոխադրուեցաւ Սամաթիոյ եկեղեցին, որ աւելի նշանակութիւն ունէր, իբրև հայաշատ կեդրոն և իբրև հին պատրիարքարան։ Եղիազար այդ յաջողութենէն քաջալերուած, կը յուսար Երուսաղէմի պատրիարքութեան գործն ալ յաջողցնել, ու Կ-Պոլիս մնալը կ'երկարէր։ Բայց միւս կողմէն Յովհաննէս Թիւթիւնճին իւր պատրիարքութիւնը կորսնցնելու վախով, կառավարութեան կը դիմէր՝ որ Եղիազարը հեռացնեն, վասնզի բոլոր արդիւնքներ անոր կ'երթային, և ինքը իր իրաւունքներէն կը զրկուէր։ Եղիազար հրաման ստացաւ հեռանալ, և այս անգամ Ապրոյ միջամտեց, զայն իւր տունը հիւրընկալեց, և միանգամայն կառավարութիւնը համոզեց թէ Եղիազար Կ-Պոլսոյ պատրիարքութեամբ չզբաղիր, այլ օրինաւորապէս ստացած կաթողիկոսութեան և Երուսաղէմի խնամակալութեան

չահերուն կը հետեւէր։ Յովհաննէսի ալ խօսուեցաւ որ Եղիազարն էր՝ որ պատրիարքութիւնը յաջողցուցած էր (§ 1758), և անոր հակառակութիւնը կրնար իրեն վնասել։ Յովհաննէս դիջաւ, Եղիազարը իրեն մօտ հրաւիրեց Գալաթի եկեղեցին, և սկսան բնակակից ըլլալ, բայց Եղիազարեանք յարմար չդատեցին, և Եղիազար նորէն Ապրոյի տունը փոխադրուեցաւ։ Այդ եղելութիւնները յարմար է նշանակել 1665 տարւոյ վերջին կէսին մէջ։

**1761**. Կացութիւնը քիչ մը հանդարտած կը կարծուէր, և ահա Երուսաղէմէ Կ-Պոլիս կը հասնի Մարտիրոս Կաֆացին, ամբաստանագիրներով և բողոքագիրներով զօրացած, Եղիազարը խպառ տապալելու համար։ Եղիազարի առած Երուսաղէմի գործակալութեան հրամանագիրը՝ կը ջնջէր Մարտիրոսի պաշտօնը, և կը քայքայէր Աստուածատուրի դիրքը, ուստի ամէնքը միացան, Յակոբ կաթողիկոսն ալ միասին, Եղիազարի դէմ ամբաստանագիրներով և Երուսաղէմի իրաւունքներուն պաշտպանութեան գիրերով Մարտիրոսը ճանպայ հանած էին՝ մայրաքաղաքին մէջ Եղիազարի դէմ մաքառելու։ Մարտիրոս 1666 տարւոյ սկիզբները Կ-Պոլիս հասնելով՝ նորէն իր շուրջը համախմբեց բոլոր Եղիազարի հակառակ խումբերը, Ջահուկեանները, Արեւելցիները, և Թըլթըլեանները, որոնց գլուխը կը գտնուէր Անդրէաս երէց մը, Ճէհէննէմ-Մէյտանլընի մականուանեալ, որ կը նշանակէ Դժոխքի [illegible], և բաւական է ցոյց տալ քահանային բնաւորութիւնը։ Անդրէաս երէց Թըլթըլեանց պետ եղած ըլլալ կ'երեւի, իբր յաջորդ Աստուածատուր երէցին (§ 1733), որուն այլեւս անունը չյիշուիր։ Պահ մը Եղիազարեանք ալ վախնալ սկսան Մարտիրոսի կազմակերպած հակառակութենէն, բազմաթիւ ամբաստանութիւններէն և տրամադրելի միջոցներէն, և սկսան խաղաղութեան և հաշտութեան առաջարկներ ընել։ Նոյնինքն Ապրոյ՝ Մարտիրոսը շահելու կերպեր ձեռք առաւ, և Երեմիա Քէօմիւրճեան անգամ մըն ալ իր բարեմիտ զգացումներով մէջտեղ ինկաւ հաշտութեան և խաղաղութեան բանակցութիւններ կատարել։ Մարտիրոս երկդիմի և կեղակարծ ձեւերով ուզեց առեն շահիլ, և հակառակորդ կողմը տկարացած կարծելով, իր ձգտումները աւելի եւս յառաջ տանիլ, և նոյնիսկ Երուսաղէմի պատրիարքութիւնը իր անունին դարձնել, որուն համախոհ դրանուեցան իր կուսակիցները, զի Աստուածատուր պատրիարք ծերացած և կորովէ ինկած էր։ Այդ նպատակով առաջարկներ եղան եպարքոսութեան առաջ պաշտօնեային, որ արդէն Մարտիրոսէ շահուած էր Ադրիանուպոլսոյ մէջ (§ 1758), և անոր հետ սակարկութիւններ սկսան, մինչ պաշտօնեան ալ իր կողմէն՝ Ապրոյի միջնորդութեամբ միւս կողմին հետ ալ սակարկութեան կը մտնէր, տեսնելու թէ որ կողմէն աւելի շահաւոր վարձք մը կրնար ապահովել։ Բայց Ապրոյ՝ Քէօբրիւլիւօղլիի հետ մտերմութեանը վստահ՝ պէտք չէր տեսնար վճարումը բարդել, և պաշտօնեան կը մնար Մարտիրոսի կողմնակից։ Այս կերպով կ'անցնէին օրերը, երբ Քէօփրիւլիւօղլուն Կրետէի պատերազմին համար Կ-Պոլիսէ կը մեկնէր, և պատեհը չկորսնցնելու համար Մարտիրոս տեսուէն կը հանէր մայրաքաղաքէն դուրս Տավութփաշայի բանակատեղը, և Եղիազարի դէմ ամբաստանութեանց գիրերը կը մատուցանէր։ Եպարքոսը կը հրամայէր Եղիազարը բերել, բայց Ապրոյ եղանակը կը գտնէր եպարքոսը համոզելու, թէ այդ խնդիրները արմատէն վերցնելու եղանակը, Աստուածատուրն ու Մարտիրոսը գործերէ հեռացնելով՝ ամենայն ինչ Եղիազարի յանձնելն է, որ կարող և տէրութեան հաւատարիմ անձն է, և նպատակ ունի օտար միջամտութիւնները ջնջել Օսմանեան երկիրներէն (ԶԱՄ. Գ. 712)։ Եղիազար իրեն դատը զօրացնելու համար, շատ մըն ալ գիրեր պատրաստել տուեր էր Ասիակողման քաղաքներէն, Կարինէ, Ամիդէ, Սեբաստիայէ, Կուտինայէ, Եւդոկիայէ, Ամասիայէ, Անկիւրիայէ, և ուրիշ տեղերէ, որոնք կը գանգատէին Էջմիածինի նուիրակներուն, և նոյնիսկ Յակոբ կաթողիկոսի ուղեւորութեան առթիւ հաւաքած իրաւունքներուն համար. և գոհունակութիւն կը յայտնէին Եղիազարի մասին, որ իրաւունք չէր պա-

**ԵՂԻԱԶԱՐԻ ՅԱՋՈՂԻԼԸ**

հանչեր և ձրի միւռոն պիտի բաշխէր։ Նոյնիսկ Կ-Պոլսոյ հայարնակութեան կողմէ ալ նմանօրինակ գիրեր պատրաստուած էին (ԱՍՏ. Ա. 381-384)։ Քէօփրիւլիօղլուն այդ տպաւորութեամբ. կատարեց հարցաքննութիւնները, և Մարտիրոսի ամբաստանութեանց դէմ Եղիազարի բացատրութեանց հաւանելով, վճիռ արձակեց Սպրոյի թելադրութեան ձևով, և Եղիազար յաղթանակելով առաջաւ թէ կաթողիկոսութեան և թէ Երուսաղէմի պատրիարքութեան համար նոր հրովարտակ մը։ Վճիռը տրուեցաւ 1666 մարտ 31'ին Մուսն ի վերայ յիշատակին չաբաթ օրը (ՁԱՄ. Գ. 712)։

**1762.** Հազիւ թէ Եղիազար իւր կաթողիկոսութիւնը և պատրիարքութիւնը ապահովցուց, հրամաններ ղրկեց Երուսաղէմ Յակոբ կաթողիկոսը հեռացնելու. եթէ իբր հիւր կը վարուի՝ պատուով ճամբայ դնել Երուսաղէմէ, իսկ եթէ գործերու կը միջամտէ՝ բռնութեամբ վտարել։ Յակոբ միաբանութեան ալ նեղութիւն չպատճառելու համար, Ս. Յակոբայ մայրավանքը թողուց և Յունաց վանք մը քաշուեցաւ. միւս կողմէն Կ-Պոլիս երթալու պատրաստութեանց ալ ձեռնարկեց՝ բաւական դժուարութեամբ, զի դրամական միջոցները սպառած լինելով, պարտք ընելու ստիպուեցաւ։ Եղիազար ալ կը պատրաստուէր Երուսաղէմ երթալ. բայց յառաջագոյն ուզեց մայրաքաղաքին մէջ ալ փառաւորուիլ եկեղեցական հանդէսներով, և եօթը եպիսկոպոսներ ձեռնադրեց, սուրբ տեղեաց նուէրներ հաւաքեց, և 250 ուխտաւորներու կարաւան մը կազմեց։ Յակոբ ու Եղիազար միեւնոյն ժամանակ ճանապարհութեան մէջ եղան, բայց իրարու չհանդիպեցան։ Յակոբ Կ-Պոլիս մտաւ 1666 սեպտեմբերին, իրեն հետ ունենալով իւր պարտատէրներն ալ, որոց վճարումը մայրաքաղաքի մէջ պիտի կատարէր (ՁԱՄ. Գ. 713), մինչ Եղիազար ոգոստոսին մէջ մայրաքաղաքէ մեկնած էր (ԱՍՏ. Ա. 387)։ Եղիազար առանձինն հրովարտակ ալ առած էր Ս. Գերեզմանին վրայ պատարագելու համար, որ Հայոց հին իրաւունքն էր, բայց Լատիններ արգելք կը դնէին, և չարունակեցին ընդդիմանալ, և նոյն հրովարտակին կրկնուիլն ալ օգուտ չունեցաւ, և Եղիազար ու նորոյ փոխանորդին այդ իրաւունքը (ԱՍՏ. Ա. 386)։ Բայց իւր կաթողիկոսութիւնը նուիրագործելու համար, 1667 յունուար 6'ին միւռոնի օրհնութիւն կատարեց Երուսաղէմի մէջ, և յունուար 27'ին կոնդակովը ծրիաբար յղեց ամէն վիճակներ։ Թուրիմացութեան հետեւանք կը կարծենք միւռոնի օրհնութիւնն ու կոնդակը 1666'ին դնելը (ՍՏՈ. 106). զի 1666'ին կը ճշմարտուի Մուսն ի վերայ յիշատակին մարտ 31'ին հանդիպիլը (ՁԱՄ. Գ. 712), ասկից ետքն է միւռոնի օրհնութիւնը։ Իւր յաջողութեանը երկնային պաշտպանութեան գոյն տալու համար, կոնդակին մէջ կը յիշէր թէ այն ձիթենին, որուն կապուելով ձաղկուեցաւ Յիսուս, Ս. Հրեշտակապետի վանքին մէջ կը պահուի, և թէև մինչև այն տարի գրեթէ բնաւ պտուղ չէր տար, բայց այն տարին այնչափ շատ տուեր է, որ բաւական եղեր է իւր ամէն կողմ բաշխած միւռոնին ձէթը մատակարարել, և թէ ի խնդրոյ Լատինաց, նոյն ձէթէն նաև Հռոմայ պապէն ընծայ առաքեցաւ (ՍՏՈ. 106)։ Եղիազարի գիւտը հանճարեղ էր, բայց իրական չէր, զի ոչ միայն միակ անպտուղ ծառէ մը այդչափ պտղաբերութիւն անհնար էր, այլև Յիսուս պրետորիոնին մէջ սիւնի կապուած ձաղկուած էր, և ոչ պարտէզի մէջ ծառի մը կապուած։ Ասկէ ետքը Եղիազար իւր դիրքը այլեւս կատարելապէս ապահովուած տեսնելով, շինարար ձեռնարկներու սկսաւ, և բաւական շինութիւններու ձեռնարկեց Երուսաղէմի և Յոպպէի մէջ։ Միաբանութիւնը համակերպելու և Աստուածատուր պատրիարք լռելու ստիպուեցան, քանի որ արքունի հրովարտակով և կուսակալներու յղուած պետական հրամանագիրներով զօրացած էր Եղիազարի իշխանութիւնը։

**ԵՂԻԱԶԱՐԻ ՄԻԽՌՈՆԸ**

**1763.** Յակոբ կաթողիկոս Կ-Պոլիս հասնելով, Իւսկիւտարէ սկսաւ բազմաթիւ գիմաւորողներէ պատուասիրուիլ։ Արեւելցիք, Ջահուկեանք և Թըլթըլեանք ամէն մեծարանք կը ցուցնէին, կծու ակնարկներով կը խօսէին և ծանր ամբաստանութիւններ կը կուտէին

**ՅԱԿՈԲԻ ՅԱՋՈՂԻԼԸ**

*Եղիազարի վրայ, որոնք կը լսէր Յակոբ, այլ չէր ձայնակցեր, մեղմօրէն կը պատասխանէր, և սիրոյ քարոզներ կը խօսէր։ Այդ հեզահամբոյր ընթացքը մեծ տպաւորութիւն գործեց ամէնուն վրայ, և մինչև իսկ Եղիազարեանները յորդորեց անոր մօտենալ։ Նոյնինքն Ապրոյ՝ Երեմիայի հետ կաթողիկոսին սկսաւ առաջարկել, որ հաւանի կաթողիկոսութեան բաժնուելուն, թող տալով որ Եղիազար Օսմանեան գաւառներու վրայ իշխէ, և ինքն ալ բաւականանայ Պարսկական երկիրներով։ Յակոբ քաղցրութեամբ կը լսէր առաջարկը, ոչ կը բարկանար և ոչ կ'ընդդիմանար, այլ մեղմ խօսակցութիւններով Ապրոն նեղի կը դնէր, բաժանումներու երեւէն ազգին կրած ու կրելիք վնասները բացատրելով, զորս Ապրոյ չէր կրնար չճանչնալ և չխոստովանիլ, և Երեմիա կը ձայնակցէր անշուշտ։ Այս ընթացքով Յակոբ մեծ ընդունելութիւն և համակրութիւն սկսաւ շահիլ. և մինչ մայրաքաղաքի մեծամեծներուն և իշխանաւորներուն շատերը Եղիազարեան էին, կը սկսէին Յակոբեան դառնալ և անոր կողմը բռնել, յորդորել և օգնութիւն խոստանալ՝ Օսմանեան կառավարութեան ձեռքով էջմիածնի իրաւունքները վերահաստատելու* (ՉԱՄ. Գ. 714)։ *Յակոբի գլխաւոր օգնականները կ'ըլլան Խօսրով և Միրզա, Ջահուկեանց գլխաւորներ, և վերջապէս կ'որոշուի որ Յակոբ Ադրիանուպոլիս երթայ և թագաւորին ներկայանայ էջմիածինի իրաւունքներուն պաշտպանութեան համար։ Խօսրով և Միրզա անոր կ'ընկերանան, իսկ Ապրոյ և Երեմիա ընդդիմութենէ ձեռնթափ կ'ըլլան։ Խօսրով նախապէս կը դիմէ, իւր բարեկամներէն և թագաւորին մտերիմներէն Ղայմազ խան կոչուած պալատականը շահելու, որ Քուլէր ընդ Բոֆտառըն է ռեղան* (ՉԱՔ. Բ. 73), *և անոր խորհրդով աղերսագիր մը կը պատրաստուի, և կ'որոշուի որ ուրբաթի աղօթքին առթիւ Յակոբ մէկ ձեռքը աղերսագիրը, և միւս ձեռքը Փիլիպպոսի տրուած հրովարտակը* (§ 1700), *փողոցին անկիւնը Մէհմէտ Դ սուլտանին դիմէ, իսկ Ղայմազ ըսելիք խօսքերն ալ կը թելադրէ։ Այնպէս ալ կ'ընէ Յակոբ, որ լայր կականօք և դառն հեծեծանօք, երբ երկու գիրերը կը մատուցանէր* (ՉԱՔ. Բ. 74)։ *Թագաւորը թուղթերը կ'առնէ, մ' լաւ ընթերցեր, մ' լաւ Քոքոյ՝ ըսելով, կը ճանչնայ իւր իսկ տուած հրովարտակը, և խնդրուածին վրայ Ղայմազէն բացատրութիւններ կ'ուզէ. որ պատշաճը կը խօսի Յակոբին համար և Եղիազարի դէմ, այնպէս որ թագաւորը բացարձակ հրաման կը հանէ, կատարել և հօֆօլ ղումենայն գործ դորա, և զգլուխ Բշնամոյ դորա է մեզոյ իրեն բերել։ Ասոր վրայ պէտք եղած հրովարտակը կը տրուի, Եղիազարի տրուած փշխանութիւնները ետ կ'առնուին, և կաթողիկոսութիւնն ու Երուսաղէմի պատրիարքութիւնը Յակոբի կը տրուին* (ՉԱՔ. Բ. 76)։ *Այդ յաջողութիւնը կը ստանար Յակոբ այն միջոցին, որ Երուսաղէմի մէջ Եղիազար ինքզինքը ապահովուած կը կարծէր։ Միւս կողմէ պէտք է գիտնալ թէ Ոսկիրիոս* (§ 1754), *վերջին անգամ Եղիազարի հետ Երուսաղէմ գացած չէր, և երբ Յակոբի յաջողութիւնը տեսաւ, անմիջապէս Եղիազարի դէմ դարձաւ, և որպէս զղջացեալ Յակոբին դիմեց, խոստովանելով թէ ահա ծանեայ զանօրէնութիւն իմ. Յակոբ հատուցց սոսա և նանէր քանէց նորա, և իրմէ առաջ զայն էջմիածին ղրկեց լինել անդ ողորմելոյ* (ՉԱՔ. Բ. 85), *որ այս անգամ պարզ գործակալի իմաստով առնուելու է։*

ՅԱԿՈԲ Կ-ՊՈԼՍՈՅ ՄԷՋ

**1764**. *Յակոբ կաթողիկոս այլեւս Կ-Պոլսոյ մէջ անդիմադրելի ազդեցութեան տէր դարձած, տեղական կարգադրութեանց ալ սկսաւ ձեռնարկել։ Երուսաղէմի պատրիարքութիւնը, որ իրեն վերագրուած էր, Մարտիրոս Կաֆացիին կը փոխանցէր, և պարտ ու պատշաճ հրովարտակով և հրամանագիրներով ճանպայ կը հանէր, որ երթայ Եղիազարը հեռացնէ։ Աստուածատուրի իրաւունքը [ink blot] ստնակոխ եղած կ'ըլլար այս կերպով, սակայն դիւրին է մտածել, որ Յակոբ Աստուածատուրը անձամբ ալ տեսնելէ ետքը՝ համոզում գոյացուցած պիտի ըլլար, թէ նա Եղիազարը տապալելու չափ կորով չունէր այլեւս, և Մարտիրոսի պէս բուռն և յախուռն անձի մը պէտքը զգալի կ'ըլլար։ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան վրայ գտնուող Յովհաննէս Թիւթիւն-*

*ծին, Էջմիածինի իշխանութիւնը խորելուն համար կանուխէն Յակոբ կաթողիկոսի աչքէն ինկած էր* (§ 1742), *և ժողովուրդին ալ սիրելի չէր՝ պարտքերէ ճնշուած եկեղեցականներու դիմելուն համար, ուստի Յակոբ իւր ազդեցութեամբ այն ալ պաշտօնանկ ընել տալով, պատրիարքութիւնը նորէն Սարգիս Թէքիրտաղցիին անցուց պետական հրովարտակով։ Յակոբ, Երուսաղէմի ուղեւորութեան և Ադրիանուպոլսոյ գործառնութեանց պատճառով բռած պարտքերն ալ կրցաւ դիւրաւ մաքրել, ժողովուրդին յօժար և առատ նուէրներովը, ամէնուն սէրն ու համակրանքը գրաւած ըլլալով, իւր հեզահամբոյր և առաքինազարդ ընթացքով, և միանգամայն առանց աղմուկի և չփոթի կատարած գործերով։ Հաւանական է որ Յակոբ կաթողիկոս այդ ամէնը կրցաւ վճարել մինչեւ զատիկը, որ կը հանդիպէր* 1667 *ապրիլ* 7*'ին, և գարնան բացուելուն ուղեւորեցաւ Էջմիածին, գործերը կարգադրած, Էջմիածինի իրաւունքները պաշտպանած, և Եղիազարի հակաթոռութեան գայթակղութիւնը դարմանած ըլլալու գոհունակութեամբ* (ՋԱՄ. Գ. 715)։

ՄԱՐՏԻՐՈՍ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

**1765**. *Մինչեւ այն ատեն, արդէն Մարտիրոս հասած էր Երուսաղէմ, և Եղիազարը վտարելով պատրիարքութեան տիրացած։ Որչափ ալ Եղիազարին փառամոլ ձգտումները, և ազգը գայթակղեցնելը ու խռովութեանց պատճառ ըլլալը մեղադրանքէ զերծ համարել հնար չըլլայ, սակայն հնար ալ չէ անոր յաջողակ և շինարար գործունէութիւնը ծածկել։ Այն համառօտ միջոցին մէջ, որ Երուսաղէմի տիրապետեց, դարձեալ բաւական նշանաւոր երախտիքներ ունեցաւ աթոռին համար։ Վրաց վերատեսուչ Մելետիոս վարդապետին՝ Ս. Յակոբայ վանքին տիրանալու յաւակնութիւնները արմատաքի ոչնչացուց. Ս. Յարութեան տաճարին մէջ Հայերուն վայելած իրաւունքները, տեղերը, կանթեղները, աշտանակները, պատկերները, սովորութիւնները, աւելածութիւնները, թափօրները, և ուրիշ կէտերը՝ պետական արձանագրութեամբ արձանագրել տուաւ և ապահովցուց։ Դաւիթ Բերիացին, որ Կիլիկիոյ աթոռէն բաժնուած մաս մը վիճակներու վրայ կաթողիկոսութիւն կը վարէր* (§ 1753), *չփոթ կացութենէն օգուտ քաղելով, սկսեր էր միւռոն դրկել և նուէր հաւաքել Բերիոյ շրջակայ Էջմիածինի պատկանող վիճակներէն։ Եղիազար զայն ալ զսպեց, և պետական հրամաններով Դաւիթի նուիրակները արտաքսեց* (ԱՍՏ. Ա. 390)։ *Եւ երբ ամէն կողմէն իւր դիրքը ամրացուցած կը կարծէր, ահա իւր դիմացը կը կանգնէր Մարտիրոս նորագոյն հրովարտակով մը, որով Երուսաղէմի պատրիարքութիւնը Եղիազարէ առնուած էր, կաթողիկոսութիւնն ալ ջնջուած էր, քանի որ Յակոբ արտօնուած էր Օսմանեան պետութեան մէջ եղող գաւառներուն վրայ կաթողիկոսական իրաւունք վարել։ Եղիազար անակնկալի հանդիպած անձի մը շուարումը ունեցաւ, զի իւր զօրաւոր պաշտպաններն ալ դարձած կամ պարտուած էին Կ-Պոլսոյ մէջ, ուստի ստիպուեցաւ անհակառակ տեղի տալ, և քաշուեցաւ Ռամլէի վանքը, զոր ինքն շինել տուած էր* (§ 1639), *և քիչ ետքը անկէ ալ հեռացաւ, և գնաց Արղնի* (ՋԱՄ. Գ. 715), *որ իւր անդրանիկ պաշտօնավայրը և գործունէութեան առաջին ասպարէզն էր եղած, և անդ դադարեցաւ բարեպատեհ առիթի սպասելով նորէն մէջտեղ ելնելու համար։ Իսկ Երուսաղէմի միաբանութիւնը որ նախապէս լուած և ընդունած էր Մարտիրոսի պատրիարքութիւնը, որպէսզի անոր ձեռքով Եղիազարը վտարէ, երբոր նպատակին հասաւ և կացութիւնը ապահովեց, սկսաւ նորէն խլրտիլ և Աստուածատուրի պատրիարքութիւնը պաշտպանել։ Մարտիրոս հարկ չտեսաւ դիմադրել, վասնզի այլեւս Աստուածատուր անուանական և պատուակալ պատրիարքութենէ աւելի բանի մը կարող չէր խոր ծերութեան հասած ըլլալով, և յանձնառու եղաւ, պատրիարքութեան անունը և պատիւը անոր թողուլ, իրեն պահելով փոխանորդութեան, կամ ինչպէս կ'ըսէին Նազըր անունի կիրառութիւնը* (ՋԱՄ. Գ. 715), *զոր աւելի ճշդութեամբ կրնայինք աթոռակից պատրիարքութիւն կոչել։ Այդ փոփոխութիւնը կը դրուի* 1668*'ին, Մարտիրոսին գալէն ոչ շատ ետքը, իսկ տեւողութիւնը դարձեալ յոյժ կարճատեւ։*

**ԵՂԻԱԶԱՐ ԵՒ ՄԱՐՏԻՐՈՍ**

**1766**. *Եղիազար երբոր լսեց Երուսաղէմի մէջ տեղի ունեցած փոփոխութիւնը, և Մարտիրոսի պատրիարքութենէ ելնելը, փութաց Կ-Պոլիս գալ, և Քէօփրիւլիւօղլուի մօտ Ապրոյի միջնորդութեամբ դիմումները կրկնել, նուէրներն ալ առատացնել, մինչև որ յաջողեցաւ իր արդէն ստացած հրովարտակները նորոգել տալ,* [illegible] *նորէն Երուսաղէմ երթալ 1668'ին* (ԱՍՏ. Ա. 392)։ *Բայց չկրցաւ երկար վայելել, զի Մարտիրոս Կ-Պոլիս դարձաւ, և նորէն իր վրայ անցուց Երուսաղէմի պատրիարքութիւնը, Եղիազարը ամբաստանելով թէ անհրաժան շինութիւններ կատարած է։ Սակայն ընտրած միջոցը ձախող ելք ունեցաւ, և հրաման եղաւ ու պաշտօնեաներ յղուեցան անհրաժան շինութիւնները քակելու, և Մարտիրոս պարտաւորուեցաւ Եղիազարի դիմել, այս բանին առջեւն առնուլ, և սա կրցաւ կաշառքներով պաշտօնեաները գոհացնել, և* [illegible] *քակելով, հրամանը կատարած ըլլալ։ Եղիազար նորէն իր դիրքը վտանգուած տեսնելով, կամովին հեռացաւ Երուսաղէմէ, և Պրուսա քաշուեցաւ անզբաղ հանգստանալու համար, եպարքոսական հրամաններով պատուաւոր կացութիւն մը ապահովելով։ Այստեղ միջանկեալ պարագայ մը կը պատմէ Երուսաղէմի պատմիչը* (ԱՍՏ. Ա. 393), *զի ուրիշներ կը գրեն, թէ Երուսաղէմի մէջ Աստուածատուրի պատրիարքութիւնը և Մարտիրոսի փոխանորդութիւնը վերահաստատելուն վրայ* (§ 1765), [illegible] (ՁԱՄ. Գ. 715)։ *Մեր ձեռքը բնագիր յիշատակարաններ կը պակսին խնդիրը ճշդելու համար։ Եղիազարի միջանկեալ գալուստին վրայ՝ որն և ըլլայ ստուգութիւնը, Մարտիրոս էր որ Երուսաղէմի գործոց գլուխը կը գտնուէր, երբ Աստուածատուր Տարոնեցին խոր ծերութեան մէջ կեանքը կնքեց 1671'ին, ինչպէս ունի Երուսաղէմի Ս. Փրկիչին մէջ եղող տապանաքարը* (ԱՍՏ. Ա. 393), *թէպէտ ոմանք 1670'ին կը դնեն* (ՁԱՄ. Գ. 715, ԲԱՌ. 55)։ *Աստուածատուր պատրիարք յաջորդած էր Պարոնտէրին 1645'ին* (§ 1688), *որով 26 տարի պաշտօն վարած կ'ըլլայ, թէպէտեւ ինկապէս շատ քիչ միջոց գործի գլուխ գտնուեցաւ, երբեմն բացակայ և երբեմն գահընկէց ըլլալով, երբեմն ալ լիազօր գործակալներ ունենալով իր մօտը, որք տիրապէս պատրիարքութիւն կը վարէին։ Բնաւորութեամբ հեզահամբոյր և ուղղութեամբ առաքինի անձի մը տիպարը կը ներկայանէ Աստուածատուր, որ անտարտունջ ամէն կացութեան հետ համակերպած է, չուզելով երբեք հեռանալ և լքանել Երուսաղէմը, որուն օգուտն եղած է իր գլխաւոր նպատակակէտը, ինչ ալ ըլլար իրեն թողուած դիրքը կամ բռնադատեալ կացութիւնը։ Աստուածատուրի մահուամբ Մարտիրոս նովին իսկ պատրիարքութիւնը ստանձնեց, որուն համար նախապէս ստացած հրովարտակներ ունէր, և արդէն ալ փոխանորդի անունով պատրիարքութեան վարիչն էր։*

**ԵՂԻԱԶԱՐԻ ՀԱՍՏԱՏՈՒԻԼԸ**

**1767**. *Աստուածատուրի մահը նորէն կը գրգռէ Եղիազարը՝ Պրուսայի հանգիստը թողուլ և Կ-Պոլիս գալ և իր կաթողիկոսութիւնը վերակենդանացնել, Երուսաղէմի պատրիարքութիւնը ձեռք ձգելով։ Նպաստաւոր պարագայ մըն էր Կ-Պոլսոյ պատրիարքին փոխուած ըլլալը։ Սարգիս Թէքիրտաղցին, որ սկիզբէն Եղիազարի հակառակորդը եղած էր* (§ 1755), *վախճանած էր 1670'ին, և Էտիրնէքափուի գերեզմանոցը թաղուած* (90 ԱՄՍ. 202)։ *Ժամանակամիջոցիս համար բաւական նորանշան եղելութիւն մըն էր Կ-Պոլսոյ պատրիարքի մը բնական մահուամբ պաշտօնին մէջ մեռնիլը։ Սարգիսի յաջորդած էր Սահփանոս Մեղրեցի, Էջմիածինի միաբաններէն, նոյն ինքն որ 1660 տարւոյ մեծ հրդեհին պատմութիւնն էր գրած* (§ 1740), *և որ անչուշտ նորէն Կ-Պոլիս կը գտնուէր նուիրակութեան պաշտօնով, հանդարտաբարոյ և բստ կարի գրոց աշակերտ և կիրքերու չծառայող անձ մը* (ՁԱՄ. Գ. 715)։ *Ուրիշ պարագայ մըն ալ կար՝ որ կրնար Եղիազարը քաջալերել։ Երուսաղէմի աթոռին վրայ եղող և իջնող պատրիարքներէն՝ թէ ոչ ամէնքը, գոնէ շատերը, դրամական ոյժով նպատակնին յառաջ վարելու համար,*

նոյն իսկ սուրբ սպասները գրաւի դնելով փոխառութեանց կը դիմէին, որով աթոռին կալուածները կը նուազէին և տաճարին գանձարանը կը պարպուէր։ Միաբանութիւնը այդ անտեղութեան առջևն առնելու համար կառավարութենէ հրաման հանել տալ կ'ուզէր, չէ պատրիարքութիւն Երուսաղէմի ի Էջմիածնա-ցին մինչ չէ ի կալուածս և ի կարասիս վանաց (ԱՍՏ. Ա. 391), և այդ մասին յատուկ գանգատ ալ կ'ընէին Մարտիրոսի դէմ, թէ զամենայն կալուածս և զպիտոյսս վանիցս ի կամս իւր և կորոյս (ԱՍՏ. Ա. 394)։ Եղիազար այդ մասին անբասիր կրնար ըսուիլ, զի մեծահարուստ ըլլալով, ոչ միայն աթոռէն բան մը չէր հաներ, այլև իրմէն ալ կը պայծառացնէր։ Այդ պարագաներ, և Քէօփրիւլիօղլուի առջևւ Ապրոյի պաշտպանութիւնը, և նոյն ինքն մեծ եպարքոսին Եղիազարի վրայ կազմած լաւ գաղափարը(§1761), չմոռնանք կաշառքներուն ոյժն ալ, գործը դիւրացուցին, և անգամ մըն ալ Եղիազար կրցաւ Երուսաղէմի պատրիարքութեան հրովարտակ ստանալ, և կրկին զօրութեամբ Երուսաղէմ դառնալ ու աթոռին տիրանալ, կաթողիկոսական ճոխանալ, և անանց որ իրեն կը դիմէին կաթողիկոսական շնորհաբաշխութիւններ ընել, առանց պնդելոյ նոյնը տարածել Թուրքիոյ բովանդակ Էջմիածնահպատակ վիճակներուն վրայ։ Իսկ Մարտիրոս Կաֆացին ստիպեալ Երուսաղէմը կը թողու, և Կոստանդնուպոլիս կու գայ, բայց Երուսաղէմի պատրիարքի անունը պահելով՝ իրեն համար առաջնորդարան մը կը բանայ այստեղ, և Երուսաղէմի օրհնութեան կոնդակներ գրելով և ցրուելով, նուէրներու կամ աւելի ճիշդ հասոյթի աղբիւր մը կը պատրաստէ իր անուանական պատրիարքութեան։ Հրովարտակ ալ կ'առնէ իր պատրիարքութեան համար, և ուրիշ մըն ալ՝ ինքը չմեռած ուրիշը պատրիարք չանուանելու համար, սակայն առանցմով մէկտեղ Կ-Պոլսէ չհեռանար, գոհանալով այս տեղ հաւաքած գումարներով (ԱՍՏ. Ա. 378)։ Իսկ Եղիազար 1671'ին վերանորոգած իշխանութիւնը անխափան կը պահէ 10 և աւելի տարիներ, Երուսաղէմի վրայ անվրդով իշխանութեամբ և կաթողիկոսական անունով, մինչև որ Էջմիածինի Մայրաթոռի վրայ իբր օրինաւոր կաթողիկոս բազմելու փափաքին կը հասնի։

**1768**. Յակոբ կաթողիկոսի Կ-Պոլիս եղած միջոցին Երևանի կուսակալը փոխուած էր, և Աբաս խանի տեղ եկած էր Սաֆի խան, ծագմամբ Լէզկի, որ աչք տնկեր էր իւրացնել զծովն և զայգին զոր Յակոբ շինել տուած էր Էջմիածինի քովը (§ 1728), բայց Մատթէոս աթոռակալ կամ տեղակալ դիմադրեց, բուն տիրոջ բացակայութիւնը և իր իշխանութիւն չունենալը պատճառելով։

ՅԱԿՈԲ ԷՋՄԻԱԾԻՆ

Հազիւ թէ Յակոբ դարձաւ և խանին տեսակցութեան գնաց, Սաֆի փոխադարձաբար Էջմիածին գալով, նորէն խնդրեաց զծովն, այսինքն է ջրամբարները, բայց Յակոբ անհնարութիւնը յայտնեց ըսելով, թէ կեանք մեր և կենդանութիւն անոնցմէ է (ՋԱՔ. Բ. 77), որովհետև արտեր ու այգիներ անոնցմով կ'ոռոգուէին (§ 1728)։ Անկէ ետքը Յակոբ կ'ուզէ Սպահան երթալ և շահ Սիւլէյմանին ներկայանալ, որ քիչ առաջ 1666'ին յաջորդած էր հօրը Շահաբաս Բ'ին։ Սա նոյնն է որ երբեմն Շահսէֆի Բ ալ կոչուեցաւ (ՋԱՔ. Բ. 84)։ Յակոբ պարտք կը զգար արտասահմանէ դարձին իր յարգանքը մատուցանել, միանգամայն տուրքը վճարել և ընծաներ ալ տանիլ, իսկ Սաֆի արգելք կը դնէր՝ կասկածելով որ իր վրայ պիտի գանգատի։ Ուստի երբ Յակոբ վերջապէս ճանպայ ելաւ, զայն Աստապատէն ետ դարձուց, և Երևանի մէջ Ս. Անանիայի Անապատը ի դիմահօջ դուռ, և ոչ մի կերպով չուզեց ազատ թողուլ։ Միանգամայն զանազան անձերէ գումարներ փոխ առաւ Էջմիածինի անունով, իբրև թէ աթոռին պարտքերը վճարելու համար, սակայն ինքն լսեաց, ոչ Յակոբի յանձնեց և ոչ տեղը ղրկեց (ՋԱՔ. Բ. 78)։ Յակոբ չկրնալով խնդրանքով իր ազատութիւնը ստանալ Սաֆիէն, փախուստի միտքը ունեցաւ, օգտուելով պահապաններու թուլութենէն, որոնց հետ սակս ելանէր և քնայր ընդ և կամէր։ Գարնանային միջոցին ի Թոռնաց աշխարհէն (ՋԱՔ. Բ. 78), այսինքն Օսմանեան գաւառներէն ուխտաւորներու գալուստը լաւ առիթ մըն էր, ուստի կանուխէն իր գոյքերը ճանպայ հա-

նեց դէպ Արտաւիլ, և Համբարձման օրը 1668 ապրիլ 30'ին հեծու ղչ-րէ է-ր և Նորո-ֆէզիյ տալար ճանապարհա եկաւ Եղիվարդ, և չարունակ ձիավարելով և թօլուխ ու մնէքէ-ղ ուղեկիցներ առնելով, հետզհետէ հանդիպեցաւ Նիգի Ձորոյներան, Լոռիի Դսեղ, և Աղուանից Բարկուշատ գիւղերը, մինչեւ հասաւ Պարսկաստանի Արտաւիլ քաղաքը, ուսկից հանդարտ գնացքով անցաւ Սպահան (ՋԱՔ. Բ. 79)։ Այնտեղ նախապէս փոխարքայ Էհտիմալ-Տէլուաթի հետ տեսակցեցաւ, և մատոյց թագաւորին համար նուէրները, սաթէ ծոմփան մը, բուստէ պաթկեր մօրքոյ, 10 ոսկի ժամացոյց, և տյը ինն պարչաճառը, և 50 ոսկի Նոր հրովարտակի համար։ Միանգամայն բացատրեց իւր Թուրքիա երթալուն չարժառիթը, այն է Էջմիածինի սուրբը գլացող Տաճկահայերը նորէն հպատակութեան բերել, որուն հաստատութիւնն էր Օսմանցայ սուլտանէն առած հրովարտակը (§ 1763), զոր ներկայեց, և վրայ բերաւ Սաֆի կուսակալէն կրած հակառակութիւնք և անիրաւութիւնք (ՋԱՔ. Բ. 81)։ Սաֆի ալ իւր կողմէն Յակոբի փախուստը իմանալուն, և բոլոր հետազօտութիւններուն պարապի ելլալուն վրայ, ծանր ամբաստանութիւններով տեղեկագիր մը գրկած էր (ՋԱՔ. Բ. 80). բայց փոխարքան կանուխէն ալ Սաֆիին հակառակորդ էր, և բատ այնմ ալ ներկայացուց գործը թագաւորին, որ վճռեց, Էբէ խոտբ-կոբն ղեբն օէրէ, մէ բետեր ու օէրեմէ, և հրամայեց կաթողիկոսը պատուել, իսկ Սաֆին պատժել, մերկացնել և կապել, կողոպտել այնպէս որ մինչեւ ցէտանը օթագըբն էու հանցէն, և չզթայակապ բանտարկել Վարդաջուրի բերդը, Դուլապի գաւառը։ Այսպէս ալ կատարեց Ատրպատականի կուսակալ Միրզա Իպրահիմ, որուն յանձնուեցաւ վճռին գործադրութիւնք (ՋԱՔ. Բ. 82), իսկ կուսակալութիւնք անդապահութեամբ վարեց Սարուխան բէկ իբր ամօ էբկօօ (ՋԱՔ. Բ. 89)։

**1769.** Նկատողութեան արժանի են Ոնոփրիոս Երեւանեցիի վերջին անցքերն ալ։ Արդէն ճանչցուցած ենք այդ անհանդարտ և անխիղճ եկեղեցականը, որ իւր կեանքին սկիզբէն ամէն տեսակ ապօրինութեանց մէջ գտնուած էր (§ 1751)։ Ժողովուրդ Կուրկոտ մականունը տուած էր անոր, որ աւերիչ բնաւորութեան նշանակ է։ Վերջին անգամ Յակոբ կաթողիկոսի հրամանով Էջմիածին գալէն ետքը (§ 1763), նոր նենգութիւններ հնարած էր Յովհաննավանքի առաջնորդ Յովհաննէս եպիսկոպոսի դէմ, սուտ մուրհակներով և անտեղի պահանջներով, թէպէտեւ չուտով խայտառակուած էր։ Յակոբ կաթողիկոս Էջմիածին դառնալով և բրածը լսելով, բաւական սեպեց յանդիմանել և տօօփէ-ու ըտէցոյց (ՋԱՔ. Բ. 86), բայց և միանգամայն Գեղամայ գաւառին նուիրակութեան ղրկեց։ Երբ կաթողիկոսը է տէդանօջ եղէ (§ 1768), Ոնոփրիոս Սաֆի խանին կողմը բռնեց կաթողիկոսին դէմ, յուսալով կուսակալին միջնորդութեամբ կաթողիկոսութեան հասնիլ, և սուտ լուրեր ալ կը տարածէր, թէ Ռօֆրէօէն կաբողէկօօըեան ատղըմ է ֆալէօ։ Բայց երբ իրաց կերպարանը փոխուեցաւ և կօրծանէցաա խանն, Ոնոփրիոս ուղեց Սպահան ապաւինիլ, բայց Սաֆին և գործակիցները պատժելու եկող պաշտօնէին մարդիկը, Նիգբա գիւղը ետեւէն հասան, Ձերբակալեցին և Զանկեանի մէջ շղթայակապ բանտարկեցին։ Այս անգամ ալ Յակոբ զայն ազատեց, և եփ էնա վէբակացըբէան ֆօրծօց տանն կաթողիկոսարանին, և մամփաբեամբ օէր անէր ըեղ նա։ Իօկ ղըբն այն ու դադաբէբ ֆաղընէ առնէւ ղըբաբէանն, և աաանց ֆէտէըսյ կաբողէկօսէն տըտր դըբտա բաղամ։ Յակոբ կաթողիկոս Էջմիածին դառնալով, երբոր տեսաւ որ իւր հրովարտակը ետեւէն չհասաւ, պարտաւորուեցաւ նորէն Սպահան դառնալ, և աղերսամատոյց ըլլալ, և հրովարտակը շնորհուեցաւ։ Միանգամայն առացաւ ղաբթանական էէըյն բոփ ըաւզօրաբեանն, ֆէղէջէկ դափմաճան օօկէնէօր, և ֆօտէ դափաաական, և ամօար վէբաըկա, և ֆէխոյ ժծաֆ օր է մանտէւ, և էբէվար ղըբեղ (ՋԱՔ. Բ. 87)։ Այդ առթիւ Ռոստոմի որդի Սաֆիղուլի խան Երեւանի կուսակալ անուանուեցաւ, և չանը էնա յանչնէտօց ղէկաբողէկօան։ Ոնոփրիոս դիմաւորելու էր գացած, և ի դարձին նոր կուսակալին հետ փութաց չուտով Երեւան հասնիլ՝ միաձայնայ Ռնոդեան տոնը ինքը կա-

ՈՆՈՓՐԻՈՍ ԵՐԵՒԱՆԵՑԻ

տարիլու գիտմամբ, և ճրագալոյցին Երևան մտաւ, մինչ կաթողիկոս նաւէն կու գար։ Ոնոփրիոս զգեստաւորուած էր, ամէն Ջրօրհնէք առաջի խանէն, և ահա կը հանի կաթողիկոսը։ Նոր կուսակալի հրամանով Ոնոփրիոսէ հանելով զգեստները, չքեցուցին կաթողիկոսէն, և ուրաքին մէյտանտէ Ջրօրհնէք առաջի խանէն, որ և հրաման ըրաւ կաթողիկոսին, զի օրհնէ և կամ ամէնընդ Կարգաւոքին, օրոտցէ։ Յակոբ որ այնչափ ներողամիտ եղած էր Ոնոփրիոսի հետ, անոր վերջին նենգութիւնները լսելով և յանդգնութիւնը տեսնելով, զայն կարգալոյծ ըրաւ ի մէջ էկեղեցւոյ, և ածելով ձեռօք խուզեաց զգլուխն և զմօրուսն։ Ոնոփրիոս կ'աղաչէր, Մօրուսս մի խուզէր. որուն կաթողիկոսը կը պատասխանէ. Ով որդի Աստուծոյ, դու ասացեալ ես, թէ ես հատանեմ զգլուխ կաթողիկոսին և հատանեմ զնա ի վերայ Իջման տեղին, ամէն ի վերայ Նորա դատարանք, արդ մեծ է՞ մօրուս քո քան զգլուխ իմ։ Կարգալոյծ Ոնոփրիոսը չղթայակապ բանտարկուեցաւ յառաջին ընդամն (ՋԱՔ. Բ. 88), որ ժահահոտ և խաւարային բանտ մի ըսուած է (ՋԱՔ. Բ. 70)։ Երկոր սենեակը խուզարկեցին, գտին մի բեռն զգեստ կանանց, և երբոր զննեցին կողոպտին, այսինքն կալուածներու վաւերագիրները ուզեցին, նա ուրացաւ. բայց երբ թրածեծ արարին զնա ի բանտին, քեռորդւոյն ձեռքով Երևանէ բերել տուաւ, որոնց մէջ գտնուեցան կաթողիկոսութեան հետապնդելուն գիրերն ալ։ Բանտին մէջ երկար չապրեցաւ, զի կոչեալ անդէն առաւօտ ինն հեծեծանօք մեռաւ (ՋԱՔ. Բ. 89)։ Թէպէտև պատմիչը տարի չնշանակեր, այլ հաւանական կ'երևի վերադիրեալ Ջրօրհնէքը դնել 1670 յունուար 6'ին, հինգշաբթի օր, նկատելով որ ամս երկուս կը գրուի Սարուխանի կուսակալական տեղապահութիւնը (ՋԱՔ. Բ. 89)։ Իսկ Ոնոփրիոսի մահը կրնայ դրուիլ նոյն տարւոյ մարտի մէջ, հետևցնելով միայն առաւօտ ինն բանտին մէջ ապրած ըլլալէն։ Աւելորդ չէր այդ մանրամասնութիւնները գրել մարդու մը վրայ, որ թէպէտ անարժան, բայց չարութեանը մէջ ճարտար դէմք մը եղած է։

**1770**. Սաֆիղուլի խան, որուն յանձնած էր շահ Սուլէյման կաթողիկոսին պաշտպան կենալ, շատ շուտ սկսաւ Նորաբոյս չարէ գործել։ Թաւրէզէ բոզ կանայս բերել տալով Երևանի մէջ հաստատեաց, և այս մասին պատմիչը կը յաւելու, ող էր բնաւ սովորութիւն մեր աշխարհին գտանել բոզ (ՋԱՔ. Բ. 89), ինչ որ եթէ բառացի ուղիղ է, լաւ գաղափար կու տայ Հայաստանի քաղաքներուն վրայ։ Իսկ Պարսիկներուն մասին գիտելի է, որ նոյնինքն թագաւորն ալ իւր կիրքերը յագեցնելու համար, բռնութեամբ տայր բերել զկանայս մեծամեծ իշխանաց (ՋԱՔ. Բ. 83)։ Սաֆիղուլիի չարիքը ժողովուրդին վրայ ալ կը տարածուէին, զի կեղեքելով ու բռնանալով դրամ դիզելու կը նայէր։ Հրամայեց մեծատուն և օտարական մեռելներ չթաղել՝ վճարմամբ հրամանագիր չառած. գողերը չէր պատժեր, այլ միայն տուգանք կամ բաժին առնելով կը թողուր ազատաբար գործել. անձրևի առեն քրիստոնէից կ'արգիլէր տուներէ ելլալ, որով աւելտուրը կը վնասուէր. իսլամներու չէր ներեր քրիստոնէից եկեղեցիները մտնել, մինչդեռ ասոնք առէպ այն տեղեր կ'երթային բժշկութեան համար։ Այդ պատճառներով նոյն իսկ Պարսիկներ իրեն դէմ բողոքող եղան, և պաշտօնանկութիւնը հետապնդեցին։ Հարկահանութեան խստութիւններուն մասին ալ իբրև նմոյշ կրնայ ծառայել, նոյն իսկ Զաքարիա Քանաքեռցի պատմիչին հօրը պատահած արկածը։ Սալան աղա անուն դասալիք Օսմանցի մը, Պարսիկներէ պաշտօնի դրուած, Քանաքեռի վրայ հարկահաւաք կու գայ, որպէս զի գրեսցէ գլուխ արանց և ամենայն իրաց, ըստ այնմ գլխահարկ պահանջելու համար։ Ամէն տանուտէրներ սկսան ներկայել իրենց արու զաւակները և մերձաւորները։ Մկրտիչ Քանաքեռցի, Զաքարիայի հայրը, Խաչատուր որդին առջեւ ձգած, և Զաքարիան չալակած կը ներկայանայ։ Սալան տեսնելով որ տղաքը քաջ և կող և բեր ատամբ են, որով տուրքէ ազատ պիտի մնան, կը բարկանայ և կը հրամայէ Մկրտիչը գետինը պառկեցնել, լաւ մը թըրջել, և մէկ մը գլխուն՝ մէկ մըն ալ ոտքերուն վրայ նստեցնելով չորս հոգիի ծեծել կու տայ այնչափ՝ որ Մկրտիչ անշնչացաւ և համարեցին զնա մեռեալ։ Պատճառն էր, իբր

**ՊԱՐՍԿԱԿԱՆ ԽՍՏՈՒԹԻՒՆՔ**

*թէ ողջ տղաքը ծածկելով խնդանդամները ներկայացուցած ըլլայ։ Նոյն գիւղի մէջ Բարսեղ և Ղազար անուն երկու անձերու եղունգները հանել կու տայ, Մարուգէ անուն անձ մըն ալ մէկ ձեռքէն կախել տալով գանակոծել կը հրամայէ։ Ծերերը ապահարկ նկատելու համար նշան ըրած էր, որ չկարենան գլուխնին շիտակ և ձեռուրնին աջէնին բռնելով քալել։ Իսկ տղայոց համար ալ նշան ըրած էր որ վիզերնուն չափ թելի մը ծայրերը, ականջներով բռնած ատեննին՝ օղակը կարենայ գլուխնուն վրայէն անցնիլ* (ՋԱՔ. Ա. 66)։ *Այսպիսի քմահաճ կարգադրութիւնները կը յիշենք իբրեւ նմոյշ այն բռնութեանց և հարստահարութեանց, որոնց ներքեւ կը հեծէին Պարսից հպատակ Հայերը, ոչ ուստեք պաշտպանութեան յոյս մը ունենալով, և կատարելապէս մատնուած ըլլալով առանց օրէնքի և առանց խղճի պաշտօնէութեան մը ձեռքը։*

**ԼԱՏԻՆԱՑԵԼՈՑ ԸՆԹԱՑՔԸ**

**1771**. *Պարսկական տիրապետութեան ներքեւ կը գտնուէին տակաւին մաս մը լատինացեալ Հայեր, որոնք թէպէտ շատ նուազած էին Որոտնեցիի և Ղրիմեցիի ատենէն* (§1394) *բայց չէին ջնջուած, և կը շարունակէին Ունիթորներուն աշխատութիւնները, որչափ ալ Պօղոս Փիրոմալլիի ձեռքով ընթացքնին քիչ մը փոխուած էր, և փոխանակ կրօնամոլ խստութեանց՝ շահեցողական գիջողութիւններ կը ցուցնէին* (§ 1676)։ *Բայց ասկէ աւելի իրենց նպաստաւոր կը դառնար պապերուն կողմէն Պարսից թագաւորներուն առջեւ եղած միջնորդութիւնք, որպէս զի յատուկ պաշտպանութիւն շնորհուի իրենց հաւատակիցներուն։ Պարսից թագաւորներն ալ մատղիւր կ'անսային, որովհետեւ այդ կերպով Եւրոպայի մէջ համակրութիւն շահելու և Եւրոպացիներէ ձեռնտուութիւն գտնելու դուռեր կը բացուէին։ Ըստ այսմ երբ Պօղոս Ե պապին կողմէ յատուկ պատուիրակ նշանակուած Պօղոս Ջիթթատինի կրօնաւորը* (padre Paolo Cittadini), *Դոմինիկեաններէ զատ Կարմեղական և Օգոստինեան միաբաններու ընկերակցութեամբ* 1615 *դեկտեմբեր* 13'*ին Մեծ Շահաբասին ներկայացաւ Սպահան քաղաքը, թագաւորը Ունիթորներու կեդրոնը եղող Երնջակին Հայ կառավարիչ նշանակեց, մանկաժողովը արգելեց, գրաւուած ինչքեր դարձուց, և զանազան դիւրութիւններ շնորհեց* (ՍԻՆ. 394)։ *Ունիթորական խումբը ասկէ քաջալերուելով իր քարոզութիւններուն և գործունէութեան աւելի զարկ տալու սկսաւ, և այդ միջոցին կ'իյնան Օգոստինոս Բաջենց՝ Նախիջեւանի ունիթոր եպիսկոպոսին, և իր գործակից Պօղոս Փիրոմալլիի ճիգերն ու Հայերէ տեսած մօտաւորութիւնները, զորս յիշեցինք Փիլիպպոս կաթողիկոսի վրայ գրած ատեննիս* (§ 1676)։ *Կրօնաւոր նոր պատուիրակ մըն ալ Ուրբանոս Ը պապին կողմէ ներկայացաւ շահ Սաֆիի* 1637 *նոյեմբեր* 13'*ին, Թովմաս Վիտալ Իտալացի Դոմինիկեանը* (padre Tommaso Vitali), *և արտօնութիւն ստացաւ վանական վարժարաններ բանալ Ջահուկ և Ապարաներ գիւղերը, որ այնտեղ աշակերտներ պատրաստելով և Հռոմի մէջ կատարելագործուելով՝ հռոմէադաւան քարոզիչներ դառնան* (ՍԻՆ. 396)։ *Այդ ձեռնարկին աւելի ոյժ տուաւ յիշեալ Պօղոս Փիրոմալլին, որ* 1654'*է* 1664 *Նախիջեւանի ունիթորական աթոռը կառավարեց, բայց տեղական խռովութիւններու պատճառով Իտալիոյ մէջ թեմակալութեան փոխադրուելով, Պիսինիանօ* (Bisignano) *քաղաքը մեռաւ* 1667 *դեկտեմբեր* 28'*ին* (ՍԻՆ. 397)։ *Հռոմէադաւաններու պաշտպանութեան համար նոր միջնորդութիւն մըն ալ ըրաւ Աղեքսանդր Է պապը,* 1664'*ին յատուկ դիմում ընելով Շահաբաս Բ'ին* (ՍԻՆ. 398), *երբ Գաղղիոյ պետութիւնն ալ այդ նպատակին ոյժ տալու ձեռնարկեց։ Լուդովիկոս ԺԴ թագաւոր* 1667 *յունիս* 26'*ի պաշտօնագիրով շահ Սուլէյմանին կը ծանուցանէր, թէ ինքն է կաթոլիկ Հայերու հովանաւորը, և փոխադարձ բարեկամութեան և օգնութեան առաջարկներ կ'ընէր, կաթոլիկներու պաշտպանութեան պայմանով։ Պարսիկ թագաւորին համար անտարբեր չէր Արեւմուտքի բարեկամութիւնը, որ կրնար զինքը ապահովել Օսմանեան պետութեան յարձակումներէն, ուստի ընդարձակ խոստումներ կու տար, և բաւական չափով ալ անոնք կ'իրականացնէր, այնպէս որ Լուդովիկոս թագաւոր* 1674'*ին յատուկ*

նամակով Նախիջեւանի Ունիթոր եպիսկոպոսին կ'աւետէր իւր միջնորդութեան արդիւնաւորումը, և աւելի եւս աշխատելու և խնամք ցուցնելու խոստումներ կ'ընէր (ԼԷՕ·298)։ Այդ ընդոստ ակնարկներ բաւական են ցուցնել, որ թէպէտ բաւական ամփոփուած էր Ունիթորներուն գործունէութիւնը, և իրենց հինգ եպիսկոպոսարանները մէկի վերածուած էին (§1750), սակայն կերպով մը աւելի զօրաւոր եղած էր անոնց դիրքը շնորհիւ Եւրոպական պաշտպանութեան, ինչ որ պէտք էր ազդու տպաւորութիւն գործէր ընդհանուր Հայութեան վրայ։

**ԼԱՏԻՆԱԿԱՆ ԳՐԳԻՌՆԵՐ**

**1772**. Հայերուն կացութեան տկարանալուն պատճառներէն աւելի մեծն ալ, եկեղեցական բարեկարգութեան անկումն և եկեղեցականներու անփառունակ ընթացքն էր։ Ինչ որ վերեւ պատմեցինք Կ-Պոլսոյ և Երուսաղէմի պատրիարքութիւններուն կաշառքի զօրութեամբ ձեռքէ ձեռք յափշտակուելուն մասին, կրնայ իբրեւ նշանակ առնուիլ՝ թէ ինչ հոգւոյ տէր էին բարձրաստիճանները, և ինչ ուղղութեան կը հետեւէին ստորին դասակարգերը, և թէ ինչ ընթացք կրնար ունենալ ասոնցմէ առաջնորդուած ժողովուրդը։ Մենք չենք քաշուիր իրականութիւնը մերկապարանոց ներկայել, ողբալով հանդերձ Հայադաւան Ուղղափառ եկեղեցւոյ ցաւալի արկածները. բայց չենք ալ հանդուրժեր, որ եղելութիւնք այլափոխուին և այլագունուին, տալով անոնց այնպիսի կերպարան մը որ իսկականը չէ։ Երբոր կաշառքն է որ կը տիրէ, կեղեքումներ և անիրաւ շահագործութիւններ անոր ուղիղ արտադրութիւններն են, և այս կարգին կը մտնեն նաեւ դիւրաւ տրուած ստորագրութիւններ և յայտարարութիւններ, երբոր անոնք հնչուն արդիւնքով կը փոխանակուին։ Պապութիւնը ամէն կողմ ցրուած կրօնաւոր քարոզիչներով՝ իւր ձեռնարկներուն համար պէտք եղած նիւթական միջոցները չէր խնայեր. քարոզիչներն ալ ճարտար էին անոնք շահագործելու, վճարեալ յայտարարութիւններ կորզելով, և զանոնք իբր յաղթական աւար պապերուն մատուցանելով։ Իսկ յայտարարութիւն տուողներն ալ ուրախ կ'ըլլային թանկագնոյ վաճառելով իրենց կեղծիքը, և առատացնելով առերեւոյթ գրութիւններ, առանց փոխելու իրենց ընթացքն ու գործը, սովորութիւնն ու կիրառութիւնը, և կրկին կրկին կը դառնային անգամ մը տրուած յայտարարութեանց, կրկնապատկելով անոնցմէ սպասուած շահագործութիւնը։ Կը յիշուի թէ Խաչատուր Սեբաստացին 1665'ին 13 եպիսկոպոսներու և 9 վարդապետներու հետ՝ Աղեքսանդր Է պապին, և 1668'ին Դաւիթ Բերիացին Կղեմէս Թ պապին՝ հպատակութեան գիրեր յղած ըլլան (ՋԱՄ·Գ·698)։ Ասոնք դրամի զօրութեամբ Կիլիկիոյ կաթողիկոսութիւնը իրարու ձեռքէն խլելու եղողներն են, որոնց համար գիտենք թէ իրենց դաւանութեան և ծէսին պատշաճները երբեք չփոխեցին, բայց պահանջուած ստորագրութիւնները չզլացան, երբոր անոնք թանկագնոյ վաճառելու համար գնողներ գտան։ Այդ բանին Լատիններն ալ տեղեակ էին, զի վերոյիշեալ Խաչատուրի համար կը գրէ Փիթու, թէ էր խաբեբայ որպէս եւ այլքն (ԲՌՆ·35)։ Նախանձայոյզ հռոմէադաւան կարծուած Նիկոլին համար ալ կը գրէ, թէ համաձայնութիւն կը ցուցնէր՝ չէ մ զիջողական կորուստ (ԲՌՆ·163)։ Մենք այնչափ չենք զարմանար շահասիրական ոգւով գործող այդ անարժաններուն վրայ, որչափ կը զարմանանք կրօնասիրական սկզբունքով խօսող հռոմէադաւաններուն վրայ, որ այսպիսիներուն ձեռքէն խլուած գիրերը, իբրեւ առաքելական հայրերու վկայութիւններ, և իբրեւ ներհուն աստուածաբաններու ուսումնասիրութիւններ կ'ընդունին ու կը ներկայեն։ Միանգամայն անոնցմով կը կազմեն հռոմէականութեան ապացոյցները, և անոնցմէ կ'ուզեն քաղել Հայոց եկեղեցւոյ դաւանական սկզբունքները։

**ՕԳՆՈՒԹԵԱՆ ՅՈՅՍԵՐ**

**1773**. Գիտենք թէ այս նենգամիտ և շահադէտ անձանց հետ կային բարեմիտներ ալ, որոնք ոչ թէ անձնական շահախնդրութեան նպատակով, այլ հանրային օգուտի մը տեսակէտէն դրդեալ, և անհրաժեշտ հարկին ներքեւ կքելով, չէին քաշուեր հռոմէականու-

*թեան մերձաւորութիւն ցուցնել, և մինչև առտիճան մըն ալ անոր պահանջած պայմաններուն համակերպիլ։ Եւրոպական զարգացման մէջ յառաջադէմ երկիրները, և մասնաւորապէս Արևելքի հետ յարաբերութեան մէջ գտնուող ազգերը, Լատին տարրին կը պատկանէին այն ատեն, և անոնց մէջ նախընթաց էին Իտալականները՝ և հետևորդ Գաղղիականները, երկուքն ալ կրօնամոլ հռոմէականութեան մէջ տոգորեալ, և պապական հոգևոր գերիշխանութեան հլու հպատակ, և անոր ակնարկութեանց գործադիր։ Որպէս զի իրենց ունեցած զարգացումէն ուրիշին մասնակցութիւն կամ հաղորդակցութիւն շնորհեն, հռոմէական դաւանութիւնը իբրև անհրաժեշտ պայման կը պահանջուէր, որով բուռն ձգտմամբ զարգացման դիմող Հայեր, նոյն լուծին ներքև խոնարհելէն տարբեր եղանակ չունէին՝ իրենց սիրտին փափաքը և միտքին ծարաւը յագեցնելու համար։ Ուստի եթէ ոչ ներքնապէս և համոզմամբ, գոնէ արտաքնապէս և պաշտօնական երևոյթով համակերպելու կը դիջանէին, և այսպիսիներու մէջ ընտրելագոյն անձեր ալ կը գտնուէին։ Ոսկանն ալ տեսանք հաւատոյ դաւանութիւն ստորագրել, որպէս զի տպարան բանալու արտօնուի (§ 1747), այն Ոսկանը որուն տպարանէն կ'ելլային* [illegible] *հռոմէական տեսակէտով (ԲՌՆ. 45), և որոց մէջ էին* [illegible] *Հայոց (ԲՌՆ. 215)։ Արդէն իրենք ալ տեղեակ պէտք է ըլլային Հայերուն ներքին ուղղութեան, զի դաւանութիւն տուող Ոսկանն ալ՝* [illegible] *կ'ըսէին (ԲՌՆ. 232), և իրենցմէ եր չէին ըսեր։ Խնդիրի նիւթ չենք ուզեր ընել, թէ մինչև ուր հնար է մղել այդ բարեմիտ կեղծիքներուն արդարացումը, Հայ եկեղեցւոյ թոյլատու և լայնախոհ սկզբունքներուն հիմնուելով ալ. այլ գիտենք և համոզուած ենք, թէ կեղծիքը ոկարներու նախադասած զէնքն է, և գուցէ այն* [illegible] *, և գիտենք ալ կ'արդարացնէ։ Միայն չենք գիտեր թէ զօրաւոր բառողին համար՝ արդեօք իրական արգիւնք մըն է՞ բռնութեամբ առնուած խոստքը, կամ թէ երկնային ըսուած ճշմարտութիւններ՝ կրնան քաղուիլ կեղծեալ յայտարարութիւններէ, թէ ոչ նոյն իսկ ճշմարտութիւն ցուցուածներն ալ կեղծիքի աստիճանին կ'իջեցնեն։*

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԵՍԱԿԷՏՆԵՐ**

**1774**. *Բարեմիտ կեղծիքներու դատակարգին պէտք է զուգակցենք ազգային գործիչներու այն կարծիքն ալ, որով օտար եկեղեցւոյ մը հետ միաբանութեան մէջ ուզած են փնտռել քաղաքական կամ եկեղեցական օգնութեան հիմերը։ Այդ նպատակին հետապնդումը տեսանք հին դարերու մէջ Ցոյներու հետ փորձուած, երբոր Հայերը անոնցմէ կը յուսային իրենց քաղաքական կացութեան և պետական դրութեան պաշտպանութիւնը։ Նոյնը փորձեցին յաջորդ դարերու մէջ Լատիններուն հետ, երբոր տեսան անոնց Արևելք արշաւանքները, և իսլամական տարրերու դէմ պարզած ոյժն ու յաղթանակը։ Այն դարուն մէջ՝ որուն վրայ կը գրենք, այլևս Հայուն համար անյոյս էր պետական դրութեան և ազգային իշխանութեան վերանորոգումը, և այս չէր կրնար ըլլալ իրեն նպատակը։ Բայց իրեն հարստահարեալ և լքեալ և անօգնական դիրքը, և իսլամական կրկին պետութեանց քմահաճ կամքին մատնուիլը, անհատական հաճոյից ձեռք խաղալիք դառնալը, և անխիղճ և անօրէն կուսակալներէն տառապիլը, գիրենք կը յուսադրէր, թէ ոչ կացութեան բարւոքումը, գոնէ մեղմացումը ձեռք ձգել, եթէ Արևմուտքէ զօրաւոր ձեռք մը իրենց պաշտպան կանգնէր։ Այս ակնկալութեան ալ իբր հիմ կամ նշան կրնային առնել հռոմէադաւան օտարազգիներուն և համազգիներուն՝ պապերու և թագաւորներու և հանրապետութիւններու կողմէ հովանաւորուիլը, և անկէ յառաջ եկած որևէ չափով օգուտը։ Այս տեսութեան հետևողներէն ոմանք, անհատաբար գործելով, կրնային հիմնապէս և անպայման կերպով հռոմէադաւանութեան յարիլ, սակայն անոնք որ հանրային պաշտօնեայ կամ գործիչ լինելու պարտքը կը վայելէին, երբեք անպայման յարակցութեան ձևին հետևող չէին, այլ կը փափաքէին*

փոխադարձ բանակցութեամբ այնպիսի գե-տին մը գտնալ, որ Հայ եկեղեցւոյ ինքնու-թիւնը պահելով, և հայադաւան և հայա-ծէս դրութեան հիմնակէտները չխախտելով, երկկողմանի համակրութիւն մը կարենար կնքուիլ։ Մինչև աստիճան մը կրնային գի-ջողութիւններ և զոհողութիւններ ալ յանձն առնել, միայն թէ Հայ եկեղեցւոյն և դաւա-նութեան, աթոռին և ծէսին ինքնութիւնը չջնջուէր, և պաշտպան ամենակուլ ձգտում-ներու չափաւորութիւն մը ապահովուէր։ Այդ դիտողութիւնները հարկ սեպեցինք այստեղ յառաջ բերել, զի նորանոր երե-ւոյթներու հանդէպ պիտի գտնուինք ա-ռաջիկային, և համէականութեան Հայոց համար խօսից և գործոց առարկայ ըլլալը պիտի տեսնենք, անոր հետեւող կամ զայն փորձող ընտիր անձնաւորութեանց ձեռ-նարկներն ալ պիտի պատմենք, ուստի կա-րեւոր էր ընդհանուր տեսութեամբ մը խըն-դիրը լուսաբանել։ Ամէնէն աւելի պէտք է չեշտենք, թէ համէականութեան մօտաւո-րութիւն ցուցնելով և բանակցութեանց մտնելով, համաձայնութեան մը հասնելու փափաքը կամ ջանքը, երբեք կանխաւ ընդունելութիւն կամ անպայման համա-կերպութիւն ըսել չէ. և ցորչափ վերջնա-կան և կանոնական, վաւերական և պաշ-տօնական որոշում մը տեղի ունեցած չէ, բանակցողներ իրենց դիրքը կորուսած կամ միտքը փոխած չեն կրնար ըսուիլ։

**1775.** Պատմութեանս շարայարութեան անցնելով, պէտք է քաղենք Յակոբ կա-թողիկոսի վերջին տարի-ներու եղելութիւնները, որոնք համեմատաբար հանդարտ անցան, և նոր միջադէպներ չեն ներկայեր։ Էջմիածնի մէջ Յակոբ կաթողիկոս վերջին անգամ Սապա-հանէ դառնալէ, և 1670 Ծնունդի ջրօրհ-նէքը Երեւանի մէջ կատարելէ ետքը (§ 1769), Էջմիածին եկաւ, և այնտեղ դադա-րեցաւ մինչեւ 1678 տարին, մատակարարու-թեամբ և մանաւոր շինութիւններով զբա-ղեցաւ, և վշտակիր սիրտով դիտեց այն աղետալի անցքերը, որոնք թէ իր չուրջը և թէ հեռու տեղերը կը կատարուէին։ Տաչորուեցաւ եկեղեցւոյն վնասներով և ազ-

ԱՂԹԱՄԱՐԻ ԱԹՈՌԸ

գին վտանգներովը, եւս առաւել ցաւելով որ չունէր այն միջոցները և այն ոյժերը՝ որոնք պէտք էին եկեղեցւոյն բարեկար-գութիւնը և ազգին բարօրութիւնը պատ-րաստելու և իրականացնելու համար։ Աղ-թամարի աթոռը կը շարունակէր այն ան-նշանակ դրութեան մէջ, զոր իւր կարգին յիշեցինք (§ 1649)։ Հաւաքարանը իբր կա-թողիկոս կը յիշէ Պաղտասարն ու Կարապետ Բունածը, որոնց կը յաջորդէ Մարտիրոս Մոկացին, Նանենց գիւղէն և Գուճի ազ-գատոհմէն, Փշրուկ մականուանեալ, որուն օրով Մոկացիք ու Շատախցիք իրարմէ կը գժտին. և Շատախի իշխան Եգդին Շէր, իւր գաւառը Էջմիածնի թեմ հռչակելով, Յակոբ կաթողիկոսէ վարդապետ մը կը խնդրէ իբր կաթողիկոսցու, և Յակոբ ալ կը ղրկէ 1661'ին մէկ մը՝ որուն անունը յիշուած չէ (ՕՕ ԲԻՋ. 1197)։ Գուցէ այս պարագան էր որ Ոսկանի թելադրեց Աղ-թամարը Էջմիածնի արքեպիսկոպոսարան-ներուն կարգը դասել (§ 1750)։ Սակայն Մարտիրոս թող չտար որ բաժանումը տեղի ունենայ. չուտով Շատախ կ'իջնէ, և ազ-դեցութեամբ կամ բռնութեամբ, այսինքն տեղական կուսակալին ալ միջամտութեամբ, ոչ միայն Շատախը կը հպատակեցնէ (ՕՕ ԲԻՋ. 1198), այլև Վան, Բերկրի, Արճէշ, Խլաթ, Բաղէշ, Մուշ, Խօշապ, և մինչև Ամիդ, իրեն ներքև առնելու հրովարտակ կը ստանայ, սուլտան Մահմուտէ, յայտարա-րելով թէ այս գաւառներ ընդ տէրութեամբ [illegible] էն, [illegible] է [illegible] Պարսից [illegible] [illegible], [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible] Պարսից (ՋԱՄ. 93)։ Բայց Յակոբ կաթողի-կոս կը յաջողի նոր հրովարտակով վճակ-ները ետ առնուլ, և Վանայ առաջնորդ Գօ-ղոս վարդապետի վրայ կը դարձնէ, իբրև վիճակ Վարագայ, առանց յիշելու Էջմիածնի անունը, որովհետև [illegible] է [illegible] Պարսից և Օսմանցւոց։ Յակոբ խոհեմութիւն սեպեց Էջմիածնի անունը չտալ, [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible], [illegible] է [illegible] Օսմանցւոց, [illegible] [illegible] է [illegible] Պարսից։ Երեւանեցին ցաւե-լով կը յաւելու, թէ [illegible] [illegible] [illegible] [illegible] Օսմանցւոց կողմանց [illegible] (ՋԱՄ. 95)։ Յակոբ գործին վերջնական յա-

*ջողութեան համար հաճեցաւ վճարել տալ Մարտիրոսին՝ և Աղթամարի իշխող Սպատուլլահ չէլէպիին, անոնց պահանջած գումարները իբրև իրենց առձեռն ծախքերուն և վնասներուն փոխարէն* (ՁԱՄ· 94)։ *Մարտիրոս այլեւս նոր փորձ չըրաւ, և վախճանեցաւ* 1663'*ին*։

**ԱՂԹԱՄԱՐԻ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐ**

**1776**· *Մարտիրոսէ ետքը Աղթամարի կաթողիկոսներուն կարգին կը յիշուին Պաղտասար մը և Ստեփանոս մը, և Մարկոս Արճիշեցի Բլուրմակ գիւղէն։ Ասոնցմէ ետքը կու գայ Յովհաննէս Թիւթիւնճին, որ Կ-Պոլսոյ պատրիարք եղած էր* 1663'*ին* (§ 1741), *և* 1664'*ին պատրիարքութենէ հանուած* (§ 1755), 1665'*ին կրկին գալն ձեռք ձգած* (§ 1758), *և* 1667'*ին կրկին վտարուած* (§ 1764)։ *Այս անգամ այլեւս Կ-Պոլսոյ մէջ յաջողելէ յոյսը կտրած, դարձած էր իւր հայրենական Վասպուրականը, ուր կրցաւ* 1667'*ին Աղթամարայ կաթողիկոս ըլլալ, և* 14 *տարի աթոռի վրայ մնալ։ Պէտք է ընդունիլ թէ Թիւթիւնճիին կաթողիկոսութիւնը իւր մահուամբը վերջացած է, զի ժամանակագրութիւնը չարդարացներ* 1683'*է ետքը Կ-Պոլսոյ պատրիարք ըլլալը, և իբր անհիմն զրոյց պիտի նկատուի պատրիարքութենէ ետքը կարգաթող ըլլալը, որոց արձագանգ եղած է Աղթամարի Հաւաքարանը* (00 ԲԻՁ· 1298)։ *Ոչ մի յիշատակ չունինք Թիւթիւնճիին կաթողիկոսական գործունէութենէն, և կ'երեւի թէ յիշատակաց արժանի արդիւնք ալ ունեցած չէ։ Զենք ալ գիտեր թէ ինչ կերպով կարգադրած է նա Յակոբ կաթողիկոսի հետ, էջմիածինի աթոռէն իւրացուցած իրաւունքներուն վճարումը* (§ 1741)։

**ԿԻԼԻԿԻԱ ԵՒ ԵՐՈՒՍԱՂԷՄ**

**1777**· *Կիլիկիոյ աթոռին վրայ լարմաժին եղած սահմաններով կը գտնուէին Խաչատուր Սեբաստացին և և Դաւիթ Բերիացին կամ Կարկառեցին* (§ 1753), *և ցուցակագիրներուն տարբերութիւնները իրարու քով բերելով կրնանք ըսել, որ թէ Խաչատուր* (ՁԱՄ· յու· 111) *և թէ Դաւիթ* (09 ՕՐԱ· 263), *միեւնոյն* 1679'*ին մեռած են։ Բայց իրենց մահուամբ ալ բաժանումը վերջացած չէ, զի Խաչատուր Մինաէրճիին տեղ նստած է Սահակ Մէյխանէճին, և Դաւիթին տեղ Ազարիա, Կարկառեցիին տեղ ուրիշ Կարկառեցի մը։ Սահակի Մէյխանէճի մականունին բացատրութիւնը չենք գտներ, թէ արդեօք գինեպան կամ գինեպանի զաւակ եղած էր, թէ ոչ պարզապէս արբշիռ մը։ Իսկ Ազարիա Գանրըլեանց ազգատոհմէն սերած, և Դաթրանի մականուն ստացած է, որ ձիւթի նման սեւաթոյր եղած ըլլալու իմաստը կու տայ։ Կիլիկիոյ կաթողիկոսութեան ներքին անցքերուն, և կրկնակ աթոռակալներուն գործերուն վրայ աւելի մանրամասնութիւններ չունինք։ Իսկ Երուսաղէմի մէջ Եղիազար պատրիարքութիւնը կը վարէր* 1671'*էն ի վեր, կաթողիկոս անունն ալ պահելով և զօրաւոր հակառակորդ մը չունէր՝ որուն դէմ մաքառիլ պարտաւորուէր, զի Մարտիրոս Կաֆացին իրեն համար նորանոր դիրք մը չինած էր։ Երուսաղէմի պատրիարքութեան անունով Կ-Պոլիս կը մնար, և կը գոհանար յանուն Երուսաղէմի հաւաքուած նուէրներով և ուխտի դարպասներով* (§ 1767)։ *Սուրբ Տեղեաց մէջ Հայերու սեփականութեանց դէմ ոտնձգութիւնները չէին դադարած, և Եղիազարի օրով նորանոր դատեր բացուեցան և վարուեցան՝ Ս. Հրեշտակապետի պատին, Բեթղեհէմի եկեղեցւոյն, Բեթղեհէմի գերեզմանատան, Ս. Փրկիչի գերեզմաննոցին, և Ս. Յարութեան դռնապաններուն պահանջմանց համար, որոնք միշտ Հայերուն նպաստաւոր վճիռներով վերջացան, շնորհիւ ընդհանուր ազդեցութեան և առատաձեռն հարստութեան զոր ունէր Եղիազար, և յաջող ու ճարպիկ գործակատարութեան Խաչատուր եպիսկոպոսին, որ Եղիազարի աջակիցն էր և դատարաններու առջև խօսողն ու փաստաբանողը* (ԱՍՏ· Ա· 395-399)։ *Այս առթիւ յիշենք թէ* 1676 *յունուար* 25'*ին կայսերական հրովարտակով Ս. Գեթսեմանին խնդիրն ալ վերջացաւ, և Լատիններուն պահանջները մերժուելով, անոր պաշտպանութիւնը՝ բանալիներով, գոյքերով ու կանթեղներով մէկտեղ Յոյներուն իրաւունքը ճանչցուեցաւ* (ԺՈՒ· 284)։

**1778**· *Լեհահայոց գործերը պատմած ենք մինչև Յակոբ կաթողիկոսէ նուիրակ յղուած*

Պօղոս Ետոկիացի վարդապետին բանի վտարումը 1655 հոկտեմբեր 29'ին (§1744), ուսկից ետքը Կղեմէս Կալանոս և Ալսիգիոս Փիթու աւելի համարձակութեամբ հետեւեցան Լեհահայերը լատինացնելու ձեռնարկին, իրենց վարժարանէն ելած նորահաս երիտասարդները քահանայացնելով, իբրև կամակատար գործիքներ, զի հին քահանաներ միշտ դըժկամակ էին նորաձեւ փոփոխութեանց, և առիթներէ կ'օգտուէին անոնք թօթափելու համար: Այսպէս էին Ներսէս Եազլովեցի նախանդամ երէցը (ԲՌՆ. 161), և Արեւելք ձեռնադրուած երկու Լեհաստանցի քահանաներ, որոց մէկը Յովհաննէս Բեռնարդովիչ է կոչուած (ԲՌՆ. 170), իսկ միւսին անունը չէ յիշուած (ԲՌՆ. 169), որոնք վերջէն, գոնէ առերես, սխրպուեցան հպատակիլ, Կալանոսի կողմէն պետական զօրութեամբ սպառնացուած վտանգներու հանդէպ: Իսկ Նիկոլ միշտ իւր երկդիմի ընթացքը կը շարունակէր, ակիզբները դիմադրութիւն ցուցնելով լատինամիտ փոփոխութեանց, ժողովուրդէ չլքուելու համար, և վերջէն համակերպութիւն յայտնելով, ինչպէս կը գրէ Փիթու, թէ Նիկոլին հետ յօլըշէր մեղ յամենայնէ՝ վօսն ամ ամ Բօլօւնէն էրչէրէօր տօհէյնօց (ԲՌՆ. 42): Հայոց կաթողիկոսին կողմէն նոր նուիրակ մը կը հասնէր Ուլահաց երկիրը, որ գիրերով կը ջանար Լեհահայերը իրենց հայրենաւանդ դաւանութեան և ծէսին մէջ պահել, սակայն միշտ միեւնոյն կերպերով ընդօւնայն էլէն ջանէ նօւխրօւչէն (ԲՌՆ. 52): Ծիշդ այդ միջոցին կը մեռնի Կղեմէս Կալանոս, Իլվովի մէջ 1666 մայիս 14'ին, և Հայոց մայր եկեղեցւոյն մօտը կը թաղուի մայիս 17'ին: Կալանոս 56 տարեկան մեռած կ'ըսուի (ԲՌՆ. 52), որով 26 տարեկան եղած կ'ըլլայ երբ Վրաստան ղըրկուեցաւ, և 30 տարեկան երբ Կ-Պոլսոյ Հայոց մէջ սկսաւ աշխատիլ (§ 1692): Քիչ առաջ մեռած էր և Բոնավենդուրա աշխատաւոր եղբայրը (ԲՌՆ. 178), որով միայն մնաց Ալսիգիոս Փիթու, և Կալանոսի յաջորդեց ֆօխանօկ ռէօւէ պաշտօնով, թէպէտ 28 տարեկան էր տակաւին, և Գէջօկ յօօօմօանօ, այլ յօլօւօկ էր է լէղօօօ, և լիովին տեղեակ Կալանոսի ուղղութեան (ԲՌՆ. 178): Փիթու ինքզինքը դրաւ Իլվովի լատին արքեպիսկոպոսին և Լեհաստանի պապական նուիրակին տրամադրութեան ներքեւ, որով կրցաւ դիմադրել Նիկոլի պահանջներուն դէմ: Իրեն աջակից ունեցաւ Յովհաննէս Կերիմովիչ Հայ եպիսկոպոսը, որ Նիկոլին քեռայրին եղբայրն էր, և անոր փոխանորդութիւնը կը վարէր: Կերիմովիչ Լեհաստանի մէջ Լատինաց մօտ ուսում առնելէ ետքը Էջմիածին գացած էր, և մինչեւ Պուղտանի կամ Մոլտավիոյ եպիսկոպոսութեան բարձրացած, ժողովուրդին հետ գըժտած և Երուսաղէմ քաշուած. իբր 7 տարի հոն մնացած, յետոյ Հռոմ երթալով հռոմէադաւանութիւն ընդունած, իբր 5 տարի ալ հոն կեցած, ետքէն Լիվօռնոյ անցած, և վերջապէս Իլվով գալով Կալանոսի պաշտպանութեամբ փոխանորդ նշանակուած էր (ԲՌՆ. 50):

**ԼԵՀԱՀԱՅՈՑ ԳՈՐԾԵՐԸ**

**1779.** Փիթու իւր առաջին քաջութիւնը ցուցուց Իլվովի վանական եկեղեցւոյն աւագերէց Սիմէոն քահանային դէմ, որ հաւատարիմ կը մնար Հայ ծէսին ամբողջութեան: Անոր մօտ իրեն աշակերտներէն երիտասարդ քահանայ մը դրաւ, և անոր վկայութեամբ Սիմէոնը բանտարկել տուաւ. Հայոց քաղաքապետին սպառնացաւ, թէ Սիմէոնը պաշտպանելով ղէլօւխ խօր տօօւժէօյէ (ԲՌՆ. 58), վերջապէս կերպ կերպ բարբարանքներով քահանան աքսորել տուաւ 1666 յուլիս 16'ին (ԲՌՆ. 61): Անկէ ետքը Փիթու՝ Նիկոլն ու Կերիմովիչը մէկդի առնելով Լեհաստանի հայաքաղաքները այցելութեան կ'ելլայ, ծիսական փոփոխութիւնները հաստատելու: Յուլիս 31'ին Եազլովից կը հասնին, ուր յաջորդ օրը, հին տոմարով յուլիս 22'ին Վարդավառի տօն կը կատարեն, և կանխաւ յիշուած փոփոխութիւններէն զատ (§1744), Յայտնաւուրքի մէջ ալ 41 կարծեցեալ Տօըրօօ-Բէխ-ՆՆէր ուղղագրեցին, զորս միառմի կը յիշէ Փիթու (ԲՌՆ. 64-67): Օգոստոս 12'ին կ'երթան Կամենից, ուր մեծ դժուարութեան կը հանդիպին ժողովուրդին կողմէն, և մինչեւ հոկտեմբեր 6 այնտեղ կը մնան, և ամէն տեսակ սպառնալիք, պետական մի-

**ՓԻԹՈՒԻ ՏԵՍՉՈՒԹԻՒՆԸ**

ջատութիւն, արքայական հրաման, և ճարտար դարձուածներ կը գործածեն մինչև որ կերպով մը Կամենիցացիները նորամուտ փոփոխութեանց յանձնառու ըլլան, գոնէ առերեւս (ԲՌՆ. 93)։ Իրենց յաջողութեան օրուչիչ փաստ կ'ըլլան Էջմիածինի նուիրակ Գօղոս Եւդոկիացիէ (§ 1744) գրուած երկդիմի նամակ մը (ԲՌՆ. 92)։ Հռոմէականութեան այդ յաջողութիւնները տեղի կ'ունենային շնորհիւ Նիկոլի, որուն կողմէ կը տրուէին փոփոխութեանց հրամանները, և Հռոմի պապութիւնն զայն կը պաշտպանէր և կը վարձատրէր, թէպէտեւ շատ լաւ գիտէր թէ որպիսի ոք էր իրեն գործիք ըրած անձը։ Պապական պաշտօնեաներ իրենց նամակներով կը հաստատէին, թէ [illegible] [illegible] են զորս ունի արքեպիսկոպոսն Հայոց Իլվովայ, ունելով կանայս [illegible]՝ ընդ որս կեայ և հաղորդութեան ունի, թէ չուզեր ելանել ի փորձոյն յոր թաթաւեալ է (ԲՌՆ. 99), և թէ [illegible] [illegible] [illegible] [illegible] [illegible], [illegible] արժանեալ էր (§ 1743)։ Պէտք կը զգային որ Նիկոլ թողցէ զկենցաղ իւր խայտառակ և արձակեսցէ զկանայսն (ԲՌՆ. 101), բայց միւս կողմանէ լաւագոյն կը սեպէին յետս կոչել ի [illegible] [illegible] [illegible], զի մի՛ այսու [illegible] այն [illegible] [illegible] (ԲՌՆ. 102)։ Անգամ մը Նիկոլ կը պատրաստուի Հռոմ երթալ Փիթուի ընկերակցութեամբ, և 1667 սեպտեմբեր 26'ին կու գան Քրաքով (Krakow կամ Cracovie), բայց Թաթարներու և Խազախներու ասպատակութեանց պատճառով, միաքերնին փոխելով Իլվով կը դառնան հոկտեմբեր 19'ին, ուր գործը ձեռք կ'առնէ Յովսէփ Կարացիոլի կրօնաւորը (Giuseppe Grazioli), որ Հռոմէ Կալանոսի յաջորդ նշանակուած էր։ Սա չահելու կերպերը չգտնալուն, Նիկոլի կողմէ խրատութեանց կը հանդիպի, իւր ձեռնարկներուն դիմադրութիւն կը տեսնէ, և հիւանդութեան մէջ ալ արգահատանք չգտնար, և կը մեռնի 1667 դեկտեմբեր 30'ին, 39 տարեկան եղած ատեն։ Նորէն առժամեայ տեսչութեան անցաւ Փիթու, որ գիտէր երբեմն չզոքացնելով և երբեմն սպառնալով Նիկոլը գործածել (ԲՌՆ. 109)։ Հաւանեցաւ իսկ անոր ընկերանալ՝ երբ 1668 յուլիս 31'ին Նիկոլ Կամենիցի և Եազլովիցի առնավաճառ ներուն կ'երթար՝ իւր սովորական ձեռնատուութեան համար (ԲՌՆ. 111)։ որուն կը ներուէր այս գործը, երբ միւս կողմէն կը բանտարկուէր Հայ վարդապետ մը՝ որ նոյն առնավաճառին մէջ ի [illegible] էր [illegible]։ Բայց գումար մեծ արծաթոյ գործը կը կարգադրէ, և վարդապետը ազատ կը թողուի (ԲՌՆ. 188)։ Փիթու այս առիթէն օգտուեցաւ նոյն տեղերը հռոմէադաւանութեան տարածման աշխատելու, և Նիկոլի հետ Իլվով դարձան սեպտեմբեր 6'ին (ԲՌՆ. 112)։ Այդ մանրամասնութիւնները յառաջ կը բերենք որպէսզի մօտէն տեսնուի, թէ ինչ միջոցներ կը գործածուէին, և ինչ անձեր գործիք կ'ըլլային Հայերը հռոմէադաւանութեան բռնադատելու համար։

1780. Պապական նոր նուիրակ Գալիատիոս Մարէսքօթթի (Galeazzo Marescotti), տեսնելով թէ ինչպիսի [illegible] վարուց կենցաղավարէր Նիկոլ, և ոչ դադարէր ի յետադարձելոյ [illegible] [illegible], համոզեց զայն Հռոմ երթալ, և 1668 հոկտեմբեր 11'ին ուղեւորեցաւ Նիկոլ, իւր երկու որդիներու հետ, և Հռոմ հասաւ դեկտեմբեր 31'ին (ԲՌՆ. 113), 20 հետեւորդներով և 21 ձիերով (ԲՌՆ. 204)։

ՆԻԿՈԼ ՀՌՈՄ ԿՈՉՈՒԱԾ

Կրկին էր Հռոմի նպատակը Նիկոլը Հռոմ բերելուն մէջ։ Եթէ մէկ կողմէն անոր անուանակ կեանքը իրեն գործին պատուաբեր չէր, միւս կողմէն ալ Նիկոլի փոփոխամիտ ընթացքը ոչ միշտ նպաստաւոր կ'ըլլար Հռոմի նպատակին։ Անոր հեռացմամբ և Կերիմովիչի սկարամիտ տեղակալութեամբ, աւելի դիւրին պիտի ըլլար Լատին կրօնաւորներուն՝ սկսուած գործը յառաջացնել, Լեհերու պետական ոյժն ալ իրենց կողմը ունենալով։ Այդ ոգւով աշխատեցաւ Փիթու՝ Նիկոլի հեռանալէն ետքը, և Կերիմովիչի ձեռքով հեռացուց հին քահանաները, և անոնց տեղ նորահաս երիտասարդներ դրաւ իրենց աշակերտներէն, և ծիսական փոփոխութիւնները ընդարձակեց նորանոր հերետիկոսութեան գտնալով Հայ եկեղեցւոյն մէջ։ Փիթուի յաջողութիւնները զայն արժանի ըրին 1670'ին [illegible] [illegible] անուանուելու պաշտօնապէս (ԲՌՆ. 209), մինչ ցայնվայր փոխանորդութեամբ

*կը վարէր գործը։ Ներքին գժտութիւն մը պիտի կարենար գործին վնասել։ Փիթուի ընկեր ղրկուած Յովսէփ Պակաթթա Վերոնացին* (Giuseppe Bagatta da Verona), *որ* 1670 *յունիս* 22'*ին Իլվով կը հասնէր, ոտեւցող էր Հայոց և չէր համաձայներ Փիթուի ճարտար չահեցողութեանց. ուստի խոչընդոտ լինէր յամենայնի, այնպէս որ տեսնալով թէ չէր այլեւս հնար համբերել անոր ընթացքին, հեռացնելու հարկը կը ծագէր, և* 1671 *յուլիս* 15'*ին Պակաթթա կը դառնար Իտալիա* (ԲՈՒՆ. 212)։ *Այդ միջոցին կը յիշուի Թադէոս Համազասպեան երէցին Լեհաստան գալը, Ոսկանի տպագրած գիրքերը վաճառելու* (§ 1748)։ *Փիթու կը հակառակի, պնդելով մանաւանդ Դավրիժեցիին պատմութեան վրայ, որուն մէջ խստիւ պախարակուած են Նիկոլի գործերը* (ԴԱՎ. 279). *բայց Կերիմովիչի թոյլտուութեամբ, Թադէոս վաճառեաց անդ գիրս իւր, և այլովքն եանց յերկիրն Մոլդովիոյ և Վալախիոյ* (ԲՈՒՆ. 216)։ *Փիթու հարկ տեսնալով նորանոր նպաստներ և կարգադրութիւններ ստանալ Հռոմէ,* 1671 *նոյեմբեր* 26'*ին Իլվովէ մեկնեցաւ, և* 1672 *յունուար* 16'*ին Հռոմ հասաւ, իսկ Լեհահայերը լատինացնելու գործը բաժնելով յանձնեց իւր ընկերներէն Օգոստինոս Լոպէլլի և Հերոնիմոս Պոսսի կրօնաւորներուն* (Agostino Lobelli *և* Girolamo Bossi), *որոնք չորս ամիս առաջ յունիս* 23'*ին Լեհաստան հասած էին* (ԲՈՒՆ. 213). *առաջինին յանձնեց վարչականն ու կրթականը, և երկրորդին մատակարարականն ու դրամականը* (ԲՈՒՆ. 217)։

ԹԷՈԴՈՐՈՍ ՎԱՐԴԱՆԵԱՆ

**1781**. *Պատմութիւնը որոշակի չպատմեր, թէ ինչ կը մտածուէր և ինչ կը գործուէր էջմիածինի մէջ Լեհահայերու կացութեան նկատմամբ։ Ընդհանուր յիշատակներ միայն կը ցուցնեն թէ գործը բարձիթողի եղած չէր։ Պօղոս Եւդոկիացիին նուիրակութենէն ետքը* (§ 1744), *Վալաքիոյ նուիրակին Լեհահայերով զբաղիլը յիշեցինք* (§ 1778), *նոր պարագայ մըն ալ այս անգամ կ'ելնէ առջեւնիս։ Նիկոլի Լեհաստանէ հեռացած ըլլալը լսելով, Յակոբ կաթողիկոս, հերձուածող կաթողիկոս էջմիածնի կոչուած Լատին պատմիչէն* (ԲՈՒՆ. 218), *պատեհը յարմար կը տեսնէ նոր եպիսկոպոս մը ղրկել Լեհաստան, իբրեւ Նիկոլի յաջորդ, և այս պաշտօնին կը կոչէ Թէոդորոս Վարդանովիչ վարդապետը, որդի ականաւոր դատաւորի Հայոց Իլվովի, և եղբօրորդի Ստեփանոս Վարդանովիչ վարդապետի, որ կը կոչուի փառաւոր կաթողիկոսին, և է նոյնինքն Ստեփանոս Իլվովացի կամ Լեհացի վարդապետը* (§ 1712), *յաղագս տանն Վարդանեանց* (ԿԱՄ. 140), *այլուր յաղագս տանն Պերնատովեանց ըսուած* (ԿԱՄ. 144), *Վարդան հայկական անունին լատինակերպ ծամածռութեամբ։ Թէոդորոս Լեհաստանի լատին հաստատութեանց մէջ ուսանելէ, և փիլիսոփայական դպրութեանց վրայ է դոկտոր հռետորականութեան ալ մանելէն ետքը, էջմիածին կոչուած էր հօրեղբօրմէն, և քահանայութեան և վարդապետութեան բարձրացած։ Այս անգամ ալ Կոստանդնուպոլսոյ մէջ* 1671 *օգոստոս* 13'*ին Վերափոխման կիրակին* (ԿԱՄ. 259), *Լեհահայոց եպիսկոպոս ձեռնադրուելով դեռ եւս է դատէ տէր, Լեհաստան կը ղրկուէր* (ԲՈՒՆ. 219) 1671 *օգոստոս* 28 *կոնդակով* (ԿԱՄ. 265), *ժողովուրդը հովուելու իբրեւ աթոռակալ և տեղապահ, և Նիկոլի մահուընէ ետքը իբր առաջնորդ հովիւ և տեսուչ* (ԿԱՄ. 264)։ *Բայց քանի մը օր ետքը* 1671 *սեպտեմբեր* 1'*ի կոնդակով, առաքելական և հայրապետական իշխանութեամբ ուղղակի առաջնորդ հովիւ և տեսուչ Լեհաց երկրին կ'անուանուի Թէոդորոսը* (ԿԱՄ. 260), *որպէսզի իշխանութիւնը վարէ՝ Հայոց եկեղեցւոյ կանոնաց համեմատ, զոր Լատինը կը մեկնէ, զի դարձուսցէ ուղղափառութեանն Հայոց, որ մոլորեալ խառնեալ էր յեկեղեցին Հռոմայ, անդրէն յիշխանութիւն հերձուածող կաթողիկոսին։ Փիթու տակաւին Հռոմ չէր հասած, երբոր Թէոդորոս Լեհաստան հասաւ. բայց չուզեց ետ դառնալ, և ուղեւորութիւնը շարունակեց։ Լոպէլլի և Պոսսի դիմեցին Լեհաց Միքայէլ Վիսնէցովսքի թագաւորին* (Koributh Wisnoviecki), *որ* 1669'*ին յաջորդած էր հրաժարեալ Յովհաննէս Կազիմիրի, պնդելով մանաւանդ թէ Իլվովի Հայ եպիսկոպոսը դեռ կենդանի է և յաջորդին ընտրութիւնը պահեալ է արքայէն Լեհացւոց։ Այսու հանդերձ Թէոդորոս հանդիսապէս Իլվով մտաւ, բայց*

այս անգամ անոր դէմ ելաւ Կերիմովիչ, որովհետեւ ինքն կը սածէր յոյս ընդունելոյ Հռոմէն շնորհաբերութեանն (ԲՈՆ. 220)։ Գործը պետութեան առջեւը ելաւ, Թէոդորոս ալ Վարշաւա գնաց, Լեհահայոց բռնած ուղղութիւնը ինքն ալ պաշտպանեց, թէ Հայերը իրենց կաթողիկոսով արդէն միացած են Հռոմի եկեղեցիին հետ, և ոչ թէ նոր միութիւն մը կը կնքեն, սակայն հակառակ կողմը զօրացաւ։ Առաջարկուեցաւ որ Հռոմ երթայ, բայց յանձն չառաւ, և ստիպուեցաւ Վենետիկ իջնալ, անկէ Արեւելք երթալու համար, և ուղղակի Բերիա գնաց։ Կը յիշուի թէ Թէոդորոս վերջէն Սպանիա գացած (ԲՈՆ. 221), և այնտեղ Դոմինիկեան վանքը քաշուած ըլլայ հռոմէականութիւն ընդունելով, սակայն Լատին պատմիչն ալ չհաւատար Թէոդորոսի հռոմէադաւան դառնալուն, և կը գրէ թէ Գծէ կաթողիկոս է գործն, և գլխաւորն է Նոր Հռոմայու (ԲՈՆ. 222)։ Թէոդորոսի գերեզմանը կը յիշուի Հռոմի մէջ, ուր մեռած է 1700 փետրուար 12'ին (ԿԱՄ. 259)։ Անգամ մըն ալ գիտել կու տանք թէ հայադաւանութիւնը, իւր թոյլատու և լայնախոհ սկզբունքներուն զօրութեամբ, երբեք առաջին ժողովներու դաւանութեան համաձայնող եկեղեցիները՝ քրիստոնեայ ընդհանրական եկեղեցիէն դուրս չէր սեպեր, որով կրնար անոնց հետ հաղորդութեան մէջ ըլլալ, և անոնց հետ միութեան մէջ հռչակել զինքն։ Իսկ Թէոդորոսի Սպանիա անցնելուն պարագաները, և անոր վախճանը ուրիշ կողմէ ծանօթ չեն։

**1782.** Թէոդորոսի միջադէպը Հռոմը գրգռեց լրջօրէն մտածել Լեհահայերուն եկեղեցական վարչութեան, Նիկոլի անձին և անոր յաջորդութեան վրայ։ Մէկ կողմէն խորհուեցաւ լատին զօրաւոր միաբանութեան մը յանձնել գործը, բայց Թէաթինեանց կարգապետը յանձն չառաւ այդ ծանրութեան ներքեւ մտնել, թէպէտ Փիթու հետամուտ էր խորհուրդը իրագործել։ Մտածեցին Դոմինիկեանց ալ դիմել, որոնք մեծ հաստատութիւն ունէին Վարշաւայի մէջ, սակայն սոյն խորհուրդն ալ չիրականացաւ։ Նիկոլը չէին ուզեր նորէն եւ դրկել, նկատելով անոր



անառակ կենցաղը և անհաստատ բնաւորութիւնը և երկդիմի ընթացքը, մինչ միւս կողմէն Հայեր հետզհետէ աւելի դժուարութեանց և վտանգներու ենթարկուած լինելով, մինչեւ իսկ Նիկոլի ներկայութիւնը նուազագոյն չարիք կը սեպէին։ Հռոմ մտածեց Նիկոլի քով օգնական մը նշանակել յաջորդութեան իրաւունքով, և հետզհետէ միաքը դարձուց Հայազգի և Իլվովացի հայր Պաւրիալովիչ Դոմինիկեան կրօնաւորին, Յովհաննէս Քրիստոստուրովիչ Զամոստիայի աւագերէցին, և փոխանորդութիւն վարող Յովհաննէս Կերիմովիչ եպիսկոպոսին վրայ, բայց չկրցաւ կատարեալ վստահութիւն կազմել։ Ամէնքը աչքերնին դարձուցին Վարդան Յունանեան Եւդոկիացի աշակերտին վրայ (ԲՈՆ. 228), որ առաջ Լեհաստանի մէջ Կալանոսի և Փիթուի ձեռքին ներքեւ կրթուած, 1670 օգոստոսին Անգելոս Փեվերաթի կրօնաւորին հետ (padre Angelo Peverati) Հռոմ էր ղրկուած (ԲՈՆ. 209), և երկու տարի ալ ի թողութեան գրութեանն Հռոմայ վարդանալով, կատարելապէս Հռոմի վստահութեան արժանացած էր (ԲՈՆ. 228)։ Այդ միջոցին տեղի կ'ունենար Օսմանեանց արշաւանքը Լեհաստանի դէմ՝ Քէօբրիւլիւօղլուի հրամանատարութեամբ, որ 1672 օգոստոս 26'ին Կամենիցը նուաճեց, և սեպտեմբեր 9'ին Իլվովը պաշարեց (ԺՈՒ. 282)։ Լոպեյլի և Պոսսի Քրաքովիա փախան, դըպրոցնին քանդուեցաւ, աշակերտներ ցրուեցան, և պարտաւորեալ Լեհահայերու և Իլվովի Հայ աթոռին համար ըլլալիք կարգադրութիւններ յետաձգուեցան (ԲՈՆ. 224)։ Միջոց ժամանակէն օգտուեցաւ Հռոմ Հայոց պատարագամատոյցը և ուրիշ ծիսական գիրքերը ուղղափառել տալու ըստ օրինակի Լատինացւոց, յատուկ յանձնաժողովի մը ձեռքով, որուն կ'անդամակցէին Ալոիզիոս Փիթու Իլվովի տեսուչը, Սերաստիանոս Գերմանացի՝ Դոմինիկեան կրօնաւոր մը, վերոյիշեալ Վարդան Յունանեան, և Հռոմի մէջ թարգմանչութիւն ընող Բարսեղ և Յովհաննէս քահանաներ (ԲՈՆ. 225)։ Ասոնց գործը այնչափ աղաւաղ և աղճատեալ, և լեզուն Նորաձեւ խառն լեզու հայկական ըսուելու չափ խճողեալ էր, որ Հռոմ ալ իրեն տրուած տեղեկութեանց հիմնուելով հրատարակու-

եկեղեցական մը, որ ընդհանուր գայթակղութեան առարկայ էր իր հրապարակային չնութեան կեանքովը. և առաջնորդարանի մէջ կը պահէր ու կը պատուէր կուսաստանէ խլուած կին մը, և անկէ ստացած երկու ապօրէն զաւակները, և մինչև Հռոմ ալ միասին կը տանէր՝ աշխարհի ցուցադրելով ամենայն անամօթութեամբ։ Եւ երբ բանադատեալ կը բաժնուի պոռնիկէն, ժամանակ անցնելէն ետքը նորէն զայն մօտ կ'առնէ երիտասարդական օրերը վերանորոգելու։ Բայց գոնէ համէականութեան հետեւելուն մէջ ուղղամտութիւն և անկեղծութիւն ունենար, զի առաջին դիմումը՝ իւր ապօրէն ձեռնադրութիւնը ժողովուրդին բռնութեամբ ընդունել տալու նպատակով եղաւ, և մինչև վերջն ալ ուրիշ արդիւնք չունեցաւ, բայց եթէ դրամական փոխարինութեան ծառայեցնել և իբրև վարձկան ծառայ Հռոմի կամքը կատարել, մինչ ժողովուրդէն ալ չահր չղադրեցնելու համար Հռոմի հրահանգներուն ալ սրտով չէր համակերպեր։ Մէկ կողմէ Հռոմէ յղուած Լատին պաշտօնեաները կը նեղէր, ժողովուրդին լաւ երևնալու համար, և միւս կողմէ ժողովուրդը բռնութեամբ և հարստահարութեամբ և կեղեքումներով կը նեղէր Հռոմի հաճոյական երևնալու համար։ Փիլիպպոս կաթողիկոսի առջև հայադաւան և հայածէս կանոններու կատարելապէս յանձնառու կ'ըլլար՝ աթոռ ձեռքէ չհանելու համար, իսկ Հռոմի պատուիրակներուն առջև ամէն պայմանի հաւանութիւն կը ցուցնէր՝ դիրքը պահպանելու համար։ Հռոմայ իշխանութիւնք և պաշտօնէութիւնք, որոնք այդ ամէնը լաւ գիտէին, ինչպէս պատմութեանս ընթացքին մէջ տեսնուեցաւ, չքաշուեցան երբեք այդպիսի մէկու մը ձեռքով նպատակնուն հետեւիլ, յայտնի ցուցնելով որ ոչ կրօնքի սրբութիւնը կամ հաւատքի ուղղութիւնը, ոչ խղճի ճշմարտութիւնը կամ բարոյականի մաքրութիւնն էր դիտուած նպատակը, այլ միայն տիրապետութեան ձգտումը և իշխանութեան տենչը, որուն համար կ'արդարանային ամէն միջոցներ և կը սրբանային ամէն միջնորդներ, բաւական էր որ նպատակին հասցնէին։ Բայց եթէ միջոցներ և միջնորդներ իրենց գոյն ու բնոյթը գործին վրայ ալ կը ցոլացնեն, ինչպէս ուղիղ միտքը կը ցուցնէ և ուղիղ խիղճը կը սորվեցնէ, համէականք պէտք է այդ հետեւանքը ճանչնան իրենց գործին և իրենց նպատակին վրայ ալ, որուն համար գործածուած միջոցներէն և միջնորդներէն քանիները յիշեցինք, քանիներ ալ առաջիկային պիտի տեսնանք։

**ՄԵՂՐԵՑԻՆ ԵՒ ՅԱՋՈՐԴՆԵՐ**

**1785**. Կ-Պոլսոյ աթոռին վրայ թողուցինք Ստեփանոս Մեղրեցին, որ 1670'ին նստեցաւ (§ 1767), և խոհական ու խաղաղասէր անձի համբաւ կը վայելէր, և կրցաւ իւր ժամանակին վրայ քիչ ու շատ ազդել, որով կուսակցական երեւէջներ իւր օրով պահ մը լռեցին։ Բայց դժբախտաբար հանդարտութիւնը հաստատուն չեղաւ, և ոչ ալ երկար եղաւ իւր պաշտօնավարութիւնը, ու 1674'ին վախճանեցաւ։ Գերեզմանաքարին վրայ յիշուած 1673 թուականը ետքէն գրուած սխալ մը կը կարծուի (ՉԷԼ. 304)։ Մահուան պարագաներուն վրայ ընդ ազօտ տեղեկութիւն մը կուտայ Քէօմիւրճեան, որ Պալքըլը թաղուածներուն կարգը կը յիշէ. Ես Ստեփանոս Մեղրեցի սոր դորրէի, կամ՝ պատրիարք, որ լէօլ դուրդողան՝ Պալաթաֆէրէն ճանէնէ, էրզասուրթէ էօռ ղլըխճըն (ՉԷԼ. 51)։ Կ'երեւի թէ պատրիարքարանի տարիներուն ունեցած պարտքերուն համար բանտարկուած է, և ազատուելէն երկու օր ետքը մեռած է, հարկաւ սրտի ցաւէն և բանտի նեղութենէն։ Նոյն իսկ պատրիարքի մը բանտարկուիլը՝ շփոթութեանց և յուզմանց նշանակն է, և պարտքին պարագան ու անոր չվճարուիլն ալ խոկոյն այդ միտքին կը տանին։ Ասկէ կը հետեւցնենք, թէ Մեղրեցիին վերջին օրերը նորէն ընդդիմադիր կուսակցութիւններ հրապարակ իջած էին, և պատրիարքութեան տիրանալու ճիգերը երկկողմանի միտումներ բորբոքած։ Մեղրեցիին յաջորդը Յովհաննէս մըն է մականուանեալ Թօփալ, որ է Կաղ, զոր ոմանք Ամասիացի վարդապետ և ուրիշներ Սամաթիացի երէց կը կոչեն (ՉԱՄ. Գ. 715)։ Տեղերու անունները հնար է համաձայնեցնել՝ ծննդավայրին ու բնակավայրին տարբերութեան պատշաճեցնելով, իսկ աստիճաններն

ալ կը համաձայնին, եթէ ըսենք թէ քահանայութենէ առաջ վեղար առած է պատրիարքանալուն առթիւ, որուն օրինակներ պակաս չեն։ Այդ ենթադրութեամբ Յովհաննէս առաջին քահանայն կ՚ըլլայ պատրիարքութեան բարձրացած, ինչ որ չատ զարմանք պէտք չէ պատճառէ, երբ կը տեսնանք, որ ոչ կանոնով և ոչ օրինաւոր ընտրութեամբ կ՚որոշուէր պատրիարք եղող անձը, այլ բաւական էր քիչ մը կուսակիցներ չահիլ, պէտք եղած գումարը ճարել, և պետական հրովարտակը գնելով պատրիարքարանին տիրանալ։ Այդ բանին կրնար ձգտիլ քահանայ մըն ալ, ինչպէս կը ձգտէր եպիսկոպոս մը կամ վարդապետ մը, մանաւանդ որ այս միջոցին քահանայութիւնը չատ զօրաւոր էր, և վեց գլխաւոր եկեղեցիներու աւագերէցներն էին որոնք իրենց քահանայ ընկերներով ամբոխավարութեան դերը կը վարէին և աղմուկներ կը յուզէին, ինչպէս տեսանք Աստուածատուր Թըլթըլը (§ 1761), և Անդրէաս Ճէհէննէմ-Մէրաիվէնին (§ 1733)։ Այդ երէցներ, որ այս ու այն եպիսկոպոսին կողմը զօրացնելով իրենց ազդեցութիւնը կը չատցնէին, չատ բնական էր որ քայլ մը ևս յառաջելով ուղղակի իրենց համար աչխատէին։ Յովհաննէսի պատրիարքութիւնը յանկարծ կը վերջանայ, ինչպէս յանկարծ սկսած էր, և պատմական աղբիւրներ չենք գտներ պարագաները բացատրելու։ Նոր օրուան կը հանդիպի Զինիլիհամամ թաղի հրկիզուած Ս. Սարգիս եկեղեցւոյն (§1640) վերաչինութեան ձեռնարկը, և չաւարտած քանդուիլը (ՋԱՄ. Գ. 715). այլ թէ որչափ ինչ արժանիք ունէր Յովհաննէս վերաչինութեան մէջ, կամ մեղադրանք փլչուելուն մէջ, մեզի անծանօթ կը մնան, միայն կ՚երեւի թէ իրեն համար չարաբաստիկ եղաւ փլուզումը, և աթոռէն անկումը յառաջ բերաւ։ Ուրիչ պարագայ մըն ալ, որ մոռացութենէ պէտք չէ վրիպի, Մարտիրոս Կաֆացիին անձն է, որ իբր Երուսաղէմի պատրիարք կամ առաջնորդ անունով Կ-Պոլիս կը նստէր, և հարկաւ անտարբեր չէր Կ-Պոլսոյ պատրիարքական աթոռին հանդէպ, զայն իրեն սեփականելու, կամ թէ իւր կուսակիցը անոր վրայ բազմեցնելու նպատակով։ Որչափ ալ կարեւոր նկատուի Կաֆացիին ընթացքը այդ չփոթներուն նըկատմամբ, սակայն որոշ կերպով ճշդուած չենք գտներ անոր դերը Յովհաննէսի անկումին մէջ։

**1786**. Յովհաննէս տարին չբոլորեր աթոռին վրայ, և իրեն ընդդիմադիր կը տեսնէ ուրիչ երէց մը, որ է ծանօթ Ճէհէննէմ-Մէրաիվէնի Անդրէասը, Թըլթըլեանց ամբոխապետը և Կաֆացիին հին բարեկամը (§ 1761), որոնք սակայն այլեւս իրարու բարեկամ չեն մնար, երբ Անդրէաս կը յաջողի 1675՚ին Յովհաննէսը տապալել և ինքն բարձրանալ, հոգ ալ չընելով վեղար առնել և վարդապետ կոչուիլ, որով առաջին անվեղար պատրիարքն եղած կ՚ըլլայ։ Հարկաւ Կաֆացիին Կ-Պոլսոյ մէջ իբրեւ պատրիարք ճոխանալն, ու ժողովրդական հասոյթներէն լաւ մաս մը իւրացնելն է, որ Անդրէասը գրգռած է անոր դիրքը խախտելու, և Կաֆացին իւր ազդեցութիւնը գործածած է զայն տապալելու, որով Անդրէաս ալ Յովհաննէսին նման չուտով կը ստիպուի տեղի տալ ուրիչ երէցի մը։ Մարտիրոս իր յաջողութեան համար ունէր անչուչտ կաչառքի ոյժը, բայց չուտով ուրիչ պարագայ մըն ալ կը հանէր անոր ձգտումները քաջալերելու։ Քէօփրիւլիւօղլու Ահմէտ փաչա, որ հիւանդ էր արդէն, ուզեց Մէհէմմէտ Դ սուլտանին ընկերանալ, երբոր սա Լեհերու պատերազմէն ետքը Ադրիանուպոլիս կը դառնար, բայց ճանպան հիւանդութիւնը սաստկանալով 1675 հոկտ. 30՚ին մեռաւ Գուլկավի մօտ Գարապիպէրի ագարակին մէջ, 42 տարեկան, բայց 15 տարի մեծ եպարքոսութիւն վարած (ԺՈՒ. 285), և իրեն յաջորդեց Գարա Մուսթաֆա փաչա, ընիկ Մարզուանցի, Թագաւորին քեռայրը և Քէօփրիւլիօղլուին մանկութենէ ընկերակիցը (ԺՈՒ. 286)։ Մարտիրոս փութաց նոր եպարքոսը իրեն չահիլ, ուստի պէտք եղած միջոցները ձեռք առաւ իւր դիրքն ամրացնելու և Երուսաղէմի պատրիարքութեան նոր հրովարտակ ստացաւ, բայց Երուսաղէմ երթալ չփորձեց և բաւականացաւ Եղիազարի իբր իւր փոխանորդի հրահանգներ ղրկել, և ինքն Կ-Պոլսոյ մէջ Երուսաղէմի վանքին և ուխտին պատկանող

ԱՆԴՐԷԱՍ ԵՒ ԿՐՊՈՅ

հասոյթները հաւաքել։ Անդրէաս այդ առթիւ իր ընդդիմութիւնը սաստկացուց, սակայն յաջողութիւն չունեցաւ, զի Մարտիրոս կրցաւ զայն պաշտօնէն վարել, և անոր տեղ իրեն հլու հպատակ, գաւառացի անուս քահանայ մը պատրիարք անուանել տալ, որ էր Կարապետ Կեսարացին, զոր ժողովուրդը հեգնօրէն Տէր Կրպոյ կը կոչէր։ Կաֆացին անոր աստիճանը բարձրացուցած ըլլալու համար փութաց վեղար տալ, և Տէր Կրպոն սկսաւ Կրպոյ Ռաբուն կոչուիլ (ԶԱՄ. Գ. 717)։ Պատրիարքական փոփոխութիւնք տեղի ունեցան 1676'ին վերջին ամիսները, և Կարապետ աթոռը պահեց երեք տարի մօտ մինչեւ 1679, ինչ որ ժամանակին շփոթութիւններուն նայելով երկարատեւ կրնայ բռնել։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱՌԱՋՆՈՐԴ**

**1787**. Կ'երեւի թէ ընդդիմութեանց գլխաւորներ Կարապետը մէկ կողմ թողած, ուղղակի Կաֆացիին դէմ ելած էին մաքառիլ, անշուշտ իրենց գրգռութիւնը ու միջոցները ստանալով Եղիազարէն, որուն համար անտարբեր կրնար ըլլալ Կ-Պոլսոյ պատրիարք եղող անձը, բայց կենսական էր Երուսաղէմի պատրիարք անունով գործող Կաֆացին տապալել։ Քանի որ Երուսաղէմի առաջնորդ անունով պաշտօն մը բաւական ժամանակէ իվեր ստեղծուած էր. զայն ոչնչացնել անհնար էր, կառավարութեան առջեւ ալ պաշտօնի փոխանցումն էր՝ ճանչցուած և գործածուած եղանակը։ Այս պիտի ըլլայ պատճառ որ փոխանակ Մարտիրոսի ստեղծած ինքնահնար պաշտօնին անգոյութեան հետապնդելու, զայն ուրիշի փոխանցելու կերպին են հետեւած Կաֆացիին հակառակորդները, Եղիազարի հովանաւորութեամբ։ Առաջին առջեւ նետուողը Ճէհէննէմ-Մերտիվէնի Անդրէասն է, զոր Կաֆացին պատրիարքութենէ հանած էր, բայց 1677'ին ոխերիմները Կաֆացիին պաշտօնը ձեռք կը ձգէ պետական հրովարտակով։ Մարտիրոս և Կարապետ միացեալ ոյժերով Անդրէասի դէմ կ'ելլեն, և 1678'ին զայն վար կ'առնեն, և նորէն Կաֆացին է որ Երուսաղէմի առաջնորդութեան հրովարտակ կը ստանայ։ Սակայն Յովհաննէս, նախկին պատրիարք (§ 1785) կը յաջողի զօրանալ և Կաֆացին հալածել, և իրեն սեփականել անոր պաշտօնը, այսինքն Երուսաղէմի առաջնորդի կամ պատրիարքի անունն ու հասոյթը (ԶԱՄ. Գ. 619), որ կրնար Երուսաղէմի փոխանորդութիւն կամ գործակալութիւն ըսուիլ, քանի որ Եղիազար էր որ իսկապէս Երուսաղէմի աթոռին վրայ կը գտնուէր, առանց սակայն որեւէ յարաբերութիւն ունենալու Կ-Պոլիս նստողին հետ։ Այս փոփոխութիւնք տեղի ունեցան 1679ին։ Սակայն այս անգամ ընդդիմադիրները միայն Կաֆացին հետապնդելով չգոհացան։ Կրպոյ Ռաբունն ալ պատրիարքութենէ հանելու ձեռնարկեցին։ Պատրիարքութեան հետապնդողը այս անգամ աշխարհական մըն էր, Սարգիս անուն, էքմէքճի մականուանեալ, զի բանակին հացի հայթայթիչն էր, և աննշան մէկը չէր, բայց փափաք զգալով ինքն վայելել պատրիարքութեան օգուտները, իսկոյն քահանայ կը ձեռնադրուի, և իբր Սարգիս երէց պատրիարքութեան հրովարտակ կը ստանայ նոյն 1679 տարին, նախընթաց քահանաներուն հետեւողութեամբ, և շնորհիւ այն յարաբերութեանց զոր ունէր պետական շրջանակներու մէջ, գուցէ ալ պատրիարքութեան հետ կը պահէր իր առաջին արհեստը։ Չենք ուզեր աւելի դիտողութեանց մտնել ժամանակին կացութեան վրայ, զի պատմուած պարագաներ բաւական են ցուցնել թէ ինչ անկումի հասած էին եկեղեցին ու եկեղեցականութիւնը, պատրիարքութիւնն ու ազգութիւնը, կամ մէկ խօսքով Հայութիւնը։

**ԴԺՈՒԱՐԻՆ ԿԱՑՈՒԹԻՒՆ**

**1788**. Այդ ամէն դժպհի եղելութեանց լուրերը կը հասնէին Յակոբ կաթողիկոսի ականջը, որ արդէն աչքով ալ տեսած էր Երուսաղէմի (§ 1759) և Կոստանդնուպոլսոյ անցուդարձերը (§ 1763), տեղեկութիւն առած էր Լեհաստանի գործողութեանց վրայ, և իրեն շուրջն ալ Էջմիածինի մէջ պակաս չէին անտեղութիւններ, և հնար չէր որ չմորմոքէր եկեղեցասէր հայրապետին սիրտը, և չմտածէր ազդու դարման հայթայթել այդ անկարգութեանց, և ազգային եկեղեցւոյն հնարաւոր բարեկարգութիւնը պատրաստել։

Ամէն միտք շուտով կը յարի այն սատրկային՝ որ իւր աչքերուն դիմաց կը կանգնի, և կաթողիկոսին տեսութեան աւելի մօտ գտնուողները համէական կրօնաւորներն էին, որոնք Հայաստանի մէջ կը տեսնուէին անդադրին Ունիթորներու օրերէն, և կը շարունակէին իրենց գործունէութիւնը աւելի կամ նուազ ընդարձակութեամբ, բայց միշտ միակերպ ուղղութեամբ։ Ասոնք երբեմն սաստիկ մոլեգնութեամբ Հայութիւնը ջնջելու և լատինութիւնը տեղը դնելու կը ջանային, բայց բաւական ժամանակէ ի վեր աւելի չափեցողական ուղղութիւն մը ընդգրկած էին, Հայոց ազգային զգացումները շոյելով, ընդհանուր գիծերու մէջ հայկական ձեւերը պահելով, և սոս և անդ բառերու կամ նախադասութիւններու կամ շարժումներու փոփոխութեամբ գոհանալով, միայն թէ պապական իշխանութեան հպատակութիւնը կամ համակերպութիւնը բացարձակ կերպով ապահովուէր, ապագային թողլով աստիճանաբար յառաջացնել փոփոխութիւնը։ Արդէն բացատրեցինք Դոմինիկեան Փիրօմալլիի, և Թէաթինեան Կալանոսի ու Փիթուի այդ ուղղութեամբ կատարած մերձեցումները։ Ասոնց ետեւէն եկած էին աւելի ճարտար և աւելի ճկուն գործիչներ, Յիսուսեան միաբաններ Իգնատիոս Լոյոլայի աշակերտութենէն, Եզուիտ կամ Ճիզվիթ (Gesuita) կոչուած։ Ասոնք տիրող պետութեան հետ ալ բարեկամութիւն հաստատելու կերպերը գիտէին, բնութեան և աստղերու գիտութեանց թեթեւ հմտութեամբ իսկ մարդիկներ կը զարմացնէին, բժշկական և առողջապահական դեղերով և հրահանգներով ժողովուրդը կը գրաւէին, և այս կերպով ճանպայ կը բանային իրենց նպատակին համաձայն ներշնչումներ թելադրելու։ Պէտք չէ եւս մոռնալ, որ ինչ ալ ըլլային համէական քարոզիչներուն ներքին սկզբունքները, նենգամիտ ուղղութիւնները, [illegible] միջոցները, և նորանոր վարդապետութիւնները, աչքի զարնող արտաքին բարեկարգութիւն մըն ալ կը պահէին, կանոնական ձեւեր ունէին, անձնուրաց կ'երեւէին, և մանաւանդ մեծերուն հրամաններուն անսալու և հրահանգներուն հետեւելու ճշդապահութեամբ կը փայլէին, որոնք աւելի կը չեշտուէին Արեւելքի մէջ, ուր կանոնական բարեկարգութիւնը և խստապահանջ հրամանակատարութիւնը շատ ետեւ մնացած էին։ Եկեղեցական խնդիրներու վրայ մտածողներ, պէտք էր խորունկ ապաւորութիւն զգային այդ շօշափելի հակադրութեանց հանդէպ։ Արեւմտեան գործիչներ ուրիշ նպատակաւոր գետին մըն ալ ունէին, և այս էր Արեւելքի մէջ տեսնուած բռնական տիրապետութեան դէմ, զօրաւոր պաշտպանութեան ակնկալութիւնը, և նիւթական օգնութեանց առատութիւնը. բան մը ուսկից հնար չէր որ չշարժուէր ու չգրաւուէր ամէն վշտացեալ ու հարստահարեալ սիրտ, և ամէն արկածեալ ու աղքատացեալ մարդ։

ՅԱԿՈԲԻ ԴԻՏՈՒՄԸ

**1789**. Այդ գաղափարներ կը գրաւէին Յակոբ կաթողիկոսի միտքն ալ, որ շատ կանուխէն իւր եկեղեցւոյն դժբախտ կացութեան գիտակից, և անոր լաւագոյն կերպարան մը տալու փափաքող, բայց տեղւոյն և պայմաններուն պահանջմամբ անձուկ շրջափակի մէջ մնացած, և չուրջը տեսածով տպաւորուելու ստիպուած, սկսած էր մտածել, թէ ինչ կերպով արդեօք կրնար օտարին վրայ տեսած առաւելութիւնները ազգային տարրին վրայ փոխանցել, և ուրիշ եկեղեցւոյ վրայ նկատած լաւութիւնները իր եկեղեցւոյն վրայ իրագործել։ Այդ գաղափարը նոր չէր Յակոբին միտքին մէջ։ Երբոր առաջին անգամ 1665'ին նա Զմիւռնիա եկաւ, անկէ Երուսաղէմ, անկէ ալ Կ-Պոլիս ճանապարհեց (§ 1759), այսպիսի նպատակ մը ունեցած էր։ Նա կ'ուզէր Օսմանեան մայրաքաղաքի և Եւրոպացւոց հետ յարաբերութեան մտնել և ուսումնասիրել, թէ ինչպէս հնար է այդ միտքը իրականացնել, և ինչ միջոցներով Արեւմտեան առաւելութիւնները Արեւելեաններուն վրայ պատուաստել։ Նա պատրաստ էր այդ նպատակին համար, եթէ հարկ ըլլայ, Արեւմուտք ալ երթալ, որուն կեդրոնը այն դարուն մէջ Հռոմն էր։ Եւրոպացի ուղեւոր մը, որ 1670'ին Զմիւռնիայէ Անգղիա երթալու համար Իտալիայէ կ'անցնէր, այնտեղ շշուկ մը լսած է, թէ Հայոց առաջին պատրիարքը, [illegible]

գուլփներէ ոսկէկցութեամբ, շարտով ֆնդըա է համ (ԼԷՕ. Ա. 242), *բայց թէ քանի մը ամիս Իտալիա մնալով ալ՝ այդպիսի բան մը չէ տեսած։ Եւ ինչպէս պիտի տեսնար 1670՚ին, քանի որ արդէն 1667՚ին Յակոբ կաթողիկոս ետ դարձած և Էջմիածին գացած էր* (§ 1764)։ *Մեզի համար շատ դիւրին է այդ կէտը վերլուծել։ Յակոբ կ՚ուզէր Արեւմուտքէն օգտուիլ, և անոնց ձեռնտուութեամբ Հայ եկեղեցին բարեկարգել և Հայ ազգութիւնը բարեզարդել, բայց երբեք չէր ուզեր Հայ եկեղեցին իր ինքնութենէն հանել և ազգը լատինացնել։ Իր նպատակին վրայ հաստատուն, իր ծրագիրին վրայ ամուր, կաթողիկոսը հարկաւ մանաւոր տեսակցութիւններ և խորհրդարար բանակցութիւններ ունեցած է Կ-Պոլսոյ մէջ, և անոնց արձագանգն է, որ մինչև Իտալիա էկեղեցական պետութեան, այսինքն պապական թագաւորութեան մէջ լսուած է, երբ Յակոբ Լատիններուն խակական ծրագիրը իմանալով, ետ կեցած էր իր միտքէն, և դարձած էր Էջմիածին։ Իսկ եթէ Էջմիածին դառնալէն երեք տարի ետքն ալ զրոյցը կը լսուէր Իտալիոյ մէջ, նշան է որ ոչ խզելով այլ յուսադրելով բանակցութիւնը փակած էր։ Իրականութիւնն այն է, որ Եւրոպացի ուղեւորն ալ լաւ թափանցած էր,* Թէ Հայոց պատրիարքը նոյնպէս հետա էր մի որևէ օտար եկեղեցւոյն հպատակելու պէտութենէց, որտեղ Հայոցմանը հետա է հասնելու կրօնէ ոմնայց (ԼԷՕ. Ա. 242)։

**1790.** *Եթէ Յակոբ կաթողիկոս հեռու էր եկեղեցին հպատակեցնելու և ձուլելու և ինքնութիւնը կորսնցնելու գաղափարէն, բայց լքած չէր համաձայնութեան օրինաւոր պետին մը գտնելու գաղափարը, միշտ ենթադրելով որ դիմացինները նոյնչափ ուղղամիտ ըլլան իրենց պահանջներուն մէջ, որչափ ինքն ալ միամիտ էր իր առաջարկներուն մէջ։ Յակոբի Կ-Պոլսէ մեկնելէն և համաձայնութեան հետապնդութենէն տասը տարիներ անցած էին, և Յակոբի տակաւին իր առաջին միտքին վրայ ըլլալուն նշանները կը տեսնենք։ Հարկաւ այդ միջոցին մէջ իրեն մօտեցան Հայաստան գտնուող տարբեր միաբանութիւններէ արեւղաները, հարկաւ Յակոբ տեսակցեցաւ և խորհրդակցեցաւ բանիմաց և բարեմիտ Հայերու հետ, և այդ ծրագրու հետեւանքը պէտք է ըլլայ այն յատուկ խորհրդակցութիւնը, զոր կազմեց 1678՚ին* (ԼԷՕ. Ա. 239), *և որուն մասնակցեցան վեց եկեղեցական առաջնորդներ և վեց աշխարհական անձեր* (ԼԷՕ. Ա. 240)։ *Տիրապէս հնար չէ այդ գումարումը ժողով կոչել այն իմաստով, որով կ՚իմանանք մենք ազգային ժողովները, զի պաշտօնական ոչ մի հանգամանք չէր ներկայեր, անոր համար մենք ալ խորհրդակցութիւն ըսինք։ Այդ խորհրդակցութեան մասին տեղեկութիւնը տուողը, ոչ աղբիւրը կը ցուցնէ և ոչ բնագիրը առջեւ կը բերէ՝ որ կարենայինք աւելի ճշդութեամբ խօսիլ, միայն կանխահաս կը տեսնենք այդ խորհրդակցութեան վերագրուած որոշումը, թէ* ժողովը վճռած է հպատակութեան յայտնել պապին (ԼԷՕ. Ա. 239)։ *Համաձայնութեան նպատակով բանակցութեան մտնելու, և բացարձակապէս հպատակութիւն յայտնելու միջեւ՝ մեծ տարբերութիւն կայ, և երկուքը իրարու չփոթելու չէ, Յակոբին վերագրելով միտքեր, զորս ունեցած չէ, և որոնցմէ միշտ հեռու մնացած է, թէպէտ ամենայն յօժարութեամբ ուզած է համաձայնութեան կերպ մը գտնել և այդ միտքով բանակցիլ։ Էջմիածինի խորհրդակցութեան մասնող աշխարհականներ Արցախեցի կամ Ղարաբաղցի են եղած, լեռնային գաւառներու խրոխտ ժողովուրդին զաւակներ, որոնք աւելի առջեւ ալ յարած ունէին աչուընին, քաղաքական ազատութեան դիրք մըն ալ ստեղծել, և իրենց գլխաւորն էր ծերունի Պռօշ իշխանը, որուն կողմէն գումարման ներկայ էր իր որդին, Իսրայէլ Օրի, զի ծերունին տկարացեալ էր տունը մնալ* (ԼԷՕ. Ա. 423)։ *Խորհրդակցութենէն պատգամաւորութիւն մը կազմուեցաւ, որ Արեւմուտք երթալով եղած խորհուրդները պիտի մշակէր, տեսակցէր, բանակցէր, և պատշաճը պիտի որոշէր։ Յակոբ կաթողիկոս, արդէն ութնամեայ, չվարանեցաւ անձամբ ուղեւորիլ։ Նշանակութեան արժանի է, որ պատգամաւորութիւնը նախ Էջմիածինէ Տփղիս գնաց* (ՋԱՔ. Բ. 91), *պարագերուն համար հան-*

ԷՋՄԻԱԾՆԻ ԽՈՐՀՈՒՐԴԸ

զանակութիւն բանալու խօսքով, բայց առանց Պարսիկ կուսակալին իմաց տալու: Անչուշտ Վրաց իշխաններուն հետ ալ տեսակցեցաւ, և հակառակ Երեւանի կուսակալէ եկած պատուիրակին անսալով եւ զանալու, ուղեւորութիւնը շարունակեց, Սեբաստիա հանդիպեցաւ, և նաւով Կ-Պոլիս անցաւ (ՁԱՔ. Բ. 91): Մենք խորհրդակցութեան ամբողջ գաղտնիքը ձեռուընիս չունինք, բայց որուն գաղտնի պահուած էր ժամանակին ալ, իսկ մէջտեղ կը խօսուէին Եղիազարի հակաթոռ կաթողիկոսութեան, և Կ-Պոլսոյ պատրիարքական աթոռին շփոթութեանց խնդիրները, որոնց կարգադրութեան համար կ'ուղեւորէր ծերունազարդ հայրապետը: Նա իւր ուղեկից և պաշտօնակից ընկերներով Կ-Պոլիս հասաւ 1679 դեկտեմբերին, որ կը ցուցնէ թէ 1678'ին խորհրդակցութենէն ետքը տակաւին զբաղած են միտքերնին հասունցնելու, ատեն մըն ալ Վրաստան մնացած են՝ Վրացիներու հետ համերաշխ գործակցութիւն մը ծրագրելու համար, և անկէ ետքը ուղեւորած են Կ-Պոլիս:

**1791**. Բաւական հետաքրքրական պէտք է ըլլային կաթողիկոսին Կ-Պոլսոյ մէջ անցուցած օրերուն գործերը, եթէ կանոնաւոր տեղեկութիւններ գրուած ըլլային, կամ մեր ձեռքը

ՅԱԿՈԲ
Ի Կ-ՊՈԼԻՍ

գանուէին: Եղելութեանց արդիւնքն ալ լոյս չտեսներ, վասնզի ոչ մի գործ չէ լրացած դեկտեմբերէ օգոստոս ութը ամիսներուն մէջ, զորս Յակոբ անցուց Կ-Պոլսոյ մէջ, ուր և մեռաւ և թաղուեցաւ: Կ-Պոլսոյ պատրիարքութեան մասին գիտցուածը՝ Էրմէքճի Սարգիս երէցին 1680'ին պաշտօնէ հանուելով՝ Կրպոյ Ոսկանին նորէն պատրիարք ըլլալն է, որ շփոթութեանց վերջանալ, կամ աթոռին կանոնական ձեւ մը տալ բսել չէ, այլ Կեսարացիին պաշտօնի անցնելովը: Միայն կը ցուցնէ թէ Յակոբ կաթողիկոս լաւ յարաբերութեանց մէջ գտնուած է Մարտիրոս Կաֆացիին հետ, որուն պաշտպանեալն էր Կրպոյ: Մարտիրոս նոյն ատեն ամէնէն կարկառուն դէմքն էր Կ-Պոլսոյ մէջ, որ Թօփալ Յովհաննէսն ալ Երուսաղէմի առաջնորդութենէն մերժած, և պաշտօնը նորէն իրեն վերադարձուցած էր Խօսրովեան և Ջահուկեան և Արեւելցի խումբերուն օգնութեամբ: Յակոբի մօտ իբրև մտերիմ խորհրդական կը տեսնանք Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեանը, որուն անունը ուրիշ անգամներ ալ տուինք, իբրև հմուտ և ուսումնական, իբրև գործիչ և խոհական անձնաւորութիւն մը: Երեմիա որդի էր Ս. Սարգիս եկեղեցւոյ քահանայ տէր Մարտիրոսին (ԹՈՐ. Բ. 401), և իւր ուսումնական զարգացմամբ թէ ազգային շրջանակին մէջ. և թէ կայսերական պաշտօնատանց մէջ դիրք և յարգանք կը վայելէր, իբրև կարող գրիչ և ճարտար թարգմանիչ, ուստի և Չէլէպի պատուանունին արժանացած: Երեմիա տպարան մըն ալ բացած էր Կ-Պոլսոյ մէջ 1667'ին, որ սակայն երկար տեւողութիւն չունեցաւ, զի ընդունելութիւն չգտան իւր պատրաստած անձուքն, այլ ու ծանրագէր տառերը, բաղդատուելով Ոսկանի պատրաստած ընտիր տառերուն հետ (ՀԻՊ. 209): Պէտք է կարծել թէ Երեմիայի հաղորդուեցան էջմիածինի խորհրդակցութեան մէջ հաստատուած գաղտնի տեսութիւնները, և անկէ յարմարագոյն խորհրդական մը չէր կրնար գտնել կաթողիկոսը, թէ օտարաց հետ յարաբերութեան մտնելու, թէ պետական զգուշաւորութիւնները կարգադրելու, և թէ ազգային կազմակերպութեան կէտերը ճշդելու համար: Երեմիայի կը վերագրուի այն խորհուրդն ալ, որով որոշուեցաւ յատուկ հրաւիրագիր ղրկել Եղիազարի որ Կ-Պոլիս գայ, և նոյն ինքն Մարտիրոս Կաֆացին, Եղիազարի հնօրեայ մրցակիցը, հրաւիրակ ղրկուեցաւ Երուսաղէմ Եղիազարը համոզելու: Յակոբի կողմէ գրուած հրաւիրագիրին մէջ Եղիազարի տրուած՝ Սիրեցելոյ իմ ի Քրիստոս զուարճական եղբօրս կոչումը, և եկ այսր, և խորհրդոց աղօթեալ փոխանակ եւս ննջեցեալ յետ առ ոչէր՝ առաջարկը (ՁԱՄ. Գ. 718), բաւական են ցուցնել թէ ընդարձակ և կենսական խնդիրի մը մասին խորհրդակցութեան կը կոչուէր Եղիազար, և Կաֆացիին անձամբ հրաւիրակ երթալը՝ կարեւորագոյն կէտ մը հաղորդելիք ըլլալը կը հաստատէ: Երուսաղէմի մէջ ալ ամէն ակնկալութենէ վեր սիրալիր կ'ըլլան երկու անհաշտ մրցակիցներուն յարաբերու-

թիւնները, և Կաֆացին մինչև իսկ միջնորդ և աղաչաւոր կ'ըլլայ, որ Եղիազար իբր օրինաւոր կաթողիկոս եպիսկոպոսական ձեռնադրութիւն կատարէ (ՉԱՄ. Գ. 719)։ Քանի որ որոշ տեղեկութիւններ չունինք ձեռուընիս, կը պարտաւորուինք գիտցուած պարագաներու ներքին նշանակութիւնները զննել։

**ՅԱԿՈԲԻ ԴԻՄՈՒՄՆԵՐԸ**

**1792.** Յակոբ դեկտեմբերին հասած էր Կ-Պոլիս, հարկաւ միջոց մը նախապատրաստական խորհրդակցութեանց զբաղեցաւ, և մինչև որ Կաֆացիին երթալը որոշուի, և մինչև որ նա Երուսաղէմ ուղեւորի, օրեր անցան, և Բուն բարեկենդանը հասաւ, որ 1680 փետրուար 21'ին կ'իյնար։ Մեծպահքը և Զատիկը ուխտաւորութեան միջոց էր, և Եղիազարի յարմար չէր Երուսաղէմէ հեռանալ, ուստի հրաւէրին պատասխանեց ուխտաւորութեան միջոցին լրանալէն ետքը գալու պատրաստակամութեամբ, և հաւանական է կարծել, որ նոյն ինքն Կաֆացին բերաւ Եղիազարի պատասխանը։ Ինչպէս նաեւ հետեւցնել, թէ տեսութեանց համաձայնութիւն մը կայացաւ Յակոբի ու Եղիազարի, Մարտիրոսի ու Երեմիայի միջև։ Անշուշտ այդ միջոցին մասնաւոր բանակցութիւններ ալ տեղի ունեցան Յակոբի կողմէն կարեւոր անձերու հետ, թէ ազգային շրջանակին մէջ, և թէ պապական ներկայացուցիչներու հետ, որոնցմէ երկու անուններ յիշուած կը գտնենք, Գասպար Կասփարինի (Gaspare Gasparini) անուանական արքեպիսկոպոս Կիւզիկոնի և պապական փոխանորդ (ԱՁԱ. 127), և Փրանկիսկոս Ճիլի՝ (Francesco Gili) Յիսուսեան միաբանութեան մեծաւոր (ԿԱԹ. 164), որոնց հետ հաւանաբար բանակցութիւն տեղի ունեցած է, բայց արդիւնքը բացասական եղած է, և ոչ մի գոհացուցիչ հետեւանք գոյացած չէ։ Ոմանք այդ հետեւանքը կը վերագրեն ներքին անհամաձայնութեան, իբր զի Յակոբի քաղաքական ծրագիրը համակրութիւն չէր գտնար Հայ հոգեւորականութեան մէջ (ԼէՕ. Ա. 243), սակայն մենք բնաւ պէտք չենք տեսներ այդպիսի մեկնութեան, որ կ'ենթադրէ Յակոբի վրայ յամառ հետապնդում և կուրօրէն համակերպութիւն Հռոմէական պահանջներուն, մինչ ոչ մի նշան կամ փաստ չկայ մէջտեղ կաթողիկոսին այսպիսի դիտում վերագրելու։ Յակոբ մեծ և ընդարձակ ծրագիր մը ունէր, Հայութեան երկու մեծ բարիքներ պատրաստել, արտաքին հովանաւորութիւն և ներքին բարեկարգութիւն, և այս նպատակին օգտակար կը դատէր Հռոմի հետ համաձայնութիւն մը, բայց ոչ երբեք կը մտածէր Հայ եկեղեցւոյ ինքնութիւնը ջնջել, Հայ եկեղեցւոյ ազատութիւնը զոհել, Հայ եկեղեցւոյ լայնախոհ սկզբունքները ուրանալ, և Հայ եկեղեցին Հռոմի եկեղեցւոյն ստրկացնել։ Նորա տեսութիւնը վեհ և բարձր էր, քրիստոնէական ուղղամիտ և անխարդախ միութեան գետին մը ստեղծել, և անկէ օգտուիլ իր ազգին բարօրութեան և իր եկեղեցւոյն բարեկարգութեան համար։ Կ'ընդունինք թէ յոյժ բարեմիտ էր Յակոբ՝ Լատին քարոզիչներուն փաղաքշական խօսքերուն հաւատալով, և թէ չափազանց միամիտ էր՝ Հռոմն ալ իր տեսութեանց և համոզմանց համաձայն ենթադրելով. բայց բնաւ չենք գտներ նշան մը, որ բացարձակապէս Հռոմի հպատակելու նպատակ ունեցած ըլլայ։ Նոյն իսկ ութը ամիսներ Կ-Պոլիս մնացած ըլլալով եզրակացութեան մը յանգած չլինելը, և Հռոմ երթալու չձեռնարկելը, նշան են իր ուղղամիտ և հաստատամիտ ըլլալուն, և նպատակին վրայ ամուր կենալուն։

**ՅԱԿՈԲԻ ՄԱՀԸ**

**1793.** Յակոբ կաթողիկոսի ծրագրին մէջ կար ուղեւորութիւնը մինչև Հռոմ ալ երկարելու միտքը, բայց պայմանական էր, որ յուսալից նշան մը տեսնէր իր ուղղութեան համաձայն։ Բայց ըլլայ իր մտքին համապատասխան սկզբնաւորութիւն չգտնելը, ըլլայ մայրաքաղաքին մէջ հոգեւորական և ազգային խոհական դասակարգերուն դժկամակութիւնը, ըլլայ Եղիազարի յապաղիլը՝ որուն հետ համամիտ գործելու նպատակ ունեցած էր, անոր կարողութենէն և ճարպիկութենէն օգտուելու համար, ըլլայ վերջապէս բանակցութեանց երկարիլը, ասոնցմէ որն և ըլլայ բուն պատճառ, կամ թէ բոլորն ալ մասնակի կերպով պատճառ եղած

ըլլան, իրականութիւնն այն է, որ Յակոբ Կ.Պոլսէ անդին չկրցաւ անցնիլ, և Հոգեգալստեան ետքը, որ մայիս 30'ին կը հանդիպէր, Հիւանդացաւ, և օր քան զօր տկարացեալ, ոչ միայն ուղեւորութեան, այլ և գործելու անբաւական եղաւ, մինչեւ որ լի աւուրբք, 82 տարեկան և 4 ամսական հասակին մէջ (ԿԱԹ· 163), վախճանեցաւ Կոստանդնուպոլիս 1680 օգոստոս 1'ին, կիրակի օր, Վարդավառէն 15 օր ետքը։ Յակոբ կաթողիկոսի օծեալ մարմինը պէտք է Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին եղած ըլլայ, որ գերեզմանն ալ Բերայի գերեզմանատան մէջ եղաւ, ի քաղաքն Ղալաթոյ, ի հռոմայեցւոց գերեզմանն, ի տեղին որ կոչի Բէկօղլի, ուր ցարդ կը տեսնուի իւր շիրիմը Հոգեւոր Տէր անունով ճանչցուած, և բարեպաշտներու ուխտատեղի եղած։ Յուղարկաւորութիւնը կատարուած է երկուշաբթի օր օգոստոս 2'ին, և գերեզմանին վրայ երեք տեղ լոյս հրաշափայլեցին կ'ըսէ պատմիչը, զոր գերեզմանին ներքեւ քար չարելու մասին կրնայինք իմանալ, սակայն ի վերայ բառը կը թելադրէ, շիրիմին երեք աստիճանով բարձրացած ըլլալուն վրայ իմանալ, ինչպէս որ աչօք իմովք տեսի կը գրէ Զաքարիա Քանաքեռցին (ԶԱՔ. Բ· 91), և ինչպէս մենք ալ կը տեսնանք տակաւին։ Յակոբ կաթողիկոսի մահուան առթիւ մտադրութեան և քննութեան արժանի կէտն է անոր անունով տեսնուած մի գիրը, որուն հիմնուելով հռոմէականք դաւանակցութեամբ կը հռչակեն, թէ մեռաւ սուրբ յառաջ քան զժամանելն իւր, եւ բոլորով դաւանութեան ուղղոյ հաւատոյ, ընդունելով ինքն զայն ամենայն զոր ընդունի հռոմէական սուրբ եկեղեցի (ԶԱՄ· Գ· 719)։ Մեր պատմիչներ այսպիսի բանէ մը տեղեկութիւն չունին, այսու հանդերձ կան ոմանք որ կ'ընդունին, թէ ի այսպիսի դաւանական խաղաղ հաստատորէն փոխեցաւ, կը լինի Հայոց եկեղեցւոց (ԶԱՄ· Բ· 34), բայց մենք այդ կարծիքին պիտի չկարենանք համաձայնիլ։

**1794**. Նախապէս պէտք է դիտել որ Յակոբի մահը օգոստոս 1'ին տեղի ունեցած է, և ոչ օգոստոս 2'ին։ Իրաւ. տապանագիրին մէջ կը կարդանք, Հողոր հօրէոր քան և լինն Հայոց Բռնի, երկրորդ անուոր անուան Հռոմայ եպիսկոպոսի, և ոչ անուան Հռոմայ (ԿԱԹ· 165), սակայն այդ արձանագրութիւնը որ անազան գրուած է հիանական խօլէֆա Զաքարիայի կողմէ, տապանին թագաւորեալ մարմնական յայտնուելէն ետքը, չփոխուած է թաղման օրը մահուան օրին հետ։ Անոր համար տապանին մէկ անկիւնը աւելցուած կայ, թէ Սուրբ հօրս յանգեալ յեղբ ՌՃԻԹ օգոստոսի Ա։ Պատմիչն ալ կ'ըսէ թէ յաւուր՝ յորում հանգուցեալ էր զնա ի տապանի, երկուշաբթի դարձեալ (ԶԱՔ Բ· 91), և 1680'ին երկուշաբթին կ'իյնայ ճշգիւ օգոստոս 2'ին։ Արդ Յակոբի բերնով գրուած դաւանագիրը օգոստոս 1 թուական կը կրէ, թէ հայերէն (ԿԱԹ. 164) և թէ գաղղիերէն օրինակներու (ԱԶԱ. 128), և թէ Յունանեանի ցուցակին մէջ (ՏԱՇ· 112), որով կը հաստատուի, թէ դաւանագիրը ոչ թէ մեռաւ սուրբ յառաջ քան զժամանելն իւր գրուած է (ԶԱՄ· Գ· 719), այլ նոյն իսկ մեռած օրը։ Արդ ամէն հետաքննին միտք կրնայ մտածել, թէ ինչ արժէք կրնայ ունենալ 82 տարեկան ծերունիի նոյն իսկ մահուան վայրկեանին տուած յայտարարութիւնը, որ 8 ամիս չարունակ Լատին աբեղաներու հետ ալ չփման մէջ գտնուելով, և երկու ամիսէ իվեր հիւանդացած ալ ըլլալով, չէ ուզած և չէ մտածած այդպիսի յայտարարութիւն մը տալ, թէպէտեւ անշուշտ իրեն մօտեցող հռոմէականներ այդպիսի գրութիւն մը ձեռք անցընելու ջանք ունեցած են։ Նոյն իսկ գրուածին պարունակութիւնն ու ոճն ալ, որուն մէջ կը յիշուին 82 տարեկան և 4 ամսական ըլլալը, 26 տարի հայրապետութիւն վարած ըլլալը, Կասպարինիի և Ճիլիի (§ 1792) ներկայ ըլլալը, և ուրիշ շատ մը երկրորդական պարագաներ, յայտնի կը ցուցնեն թէ ծերունի հոգեվարքի գրելուն կամ թելադրելուն կամ մտածելուն յարմար գրութիւն չէ, այլ ուրիշներէ պատրաստուած և նեղ վայրկենի մը մէջ իբր թէ ստորագրել տրուած գիր մըն է։ Եթէ բնագիրը մէջտեղ ըլլար, կրնար նոյն իսկ ստորագրութիւնը քննուիլ, թէ ութսնամեայ հոգեւարքին դողդոջուն մատերէն ելած կրնա՞յ ըսուիլ։ Հետեւաբար երբեք արժէք և նշանակութիւն ունեցող գրուած մը չկրնար ըսուիլ այդ գիրը, ինչ-

չափ ալ համեստական՝ պայծառ ու լուսաւոր հաւատոյ դաւանութեան (ԿԱԹ. 163), կամ ջերմեռանդութեամբ ծանուցեալ ու ընդերկեալ դաւանութեան (ԱՋԱ. 125) անունով այդ կեղակարծ գրութեան մէջ։

**ՎԵՐԱԳՐՈՒԱԾ ԳՐՈՒԹԻՒՆԸ**

**1795.** Բայց պէտք է ուրիշ կարեւոր կէտ մըն ալ նկատողութեան առնել։ Յակոբի դաւանագիրին թէ հայերէնը (ԿԱԹ. 163) և թէ գաղղիերէնը (ԱՋԱ. 125), Հռոմի դիւաններէն հանուելով իբր թէ բառական և տառական ճշդութեամբ հրատարակուած են համեստականութեան պաշտպաններէն։ Արդ հայերէնը երեսունուեօթը տողի ընդարձակութիւն ունեցած ատեն, գաղղիերէնը յիսունուհինգ տող գրուած մըն է, և բնաւ թէ այս երկուքը՝ իբր իսկական բնագիր և իբր նոյն վաւերագիր առջեւ կը բերուին։ Կը սիրեն կարծել թէ ընդարձակ թարգմանութեան բերելով (ԿԱԹ. 164) կրնան արդարացնել և իբր վաւերական և պաշտօնական ներկայացնել այդ տեսակ խարդախ խեղաթիւրումները։ Ընդհակառակն ամէն խոհեմ քննադատ կրնայ համարձակ ըսել, թէ երկու կեղակարծ գրուածներ են, ճարտար համեստականներէ պատրաստուած, և իբրեւ իրենց յաջողակութեան արդիւնք պապութեան ներկայացուած, փոխադարձ վարձքին կամ գովեստին արժանալու համար. քանի որ իրենց երկար բանակցութիւններով արդիւնք մը ձեռք չէին կրցած ձգել, և դիւրին միջոց մըն էր՝ այլեւս ձայն հանել չկրցող հանգուցելոյն բերանը ուզած խօսքերնին դնել։ Մանաւանդ որ այսպիսի բան մը, եթէ իրօք տեղի ունեցած ըլլար, պէտք չէր անծանօթ մնար կաթողիկոսին շուրջը գտնուողներէն, մանաւանդ թէ պէտք էր որ հանրութեան մէջ ալ լսուէր, և իւրաքանչիւրին ձգտումներուն համեմատ գովասանքի կամ մեղադրանքի նիւթ ըլլար, և ազգին մէջ շշուկ տարածուէր և շփոթութիւն ծագէր, և ոչ թէ բոլորովին անծանօթ մնար, և հայրապետը իբր հաւատարիմ ուղղափառ հայադաւան պատուուէր և գովուէր, օրհնաբանուէր ու բարեբանուէր, և սրբութեան համբաւով փառաւորուէր։ Մինչ ամէն ազգային յիշատակարաններ և պատմութիւններ՝ բացարձակապէս, կ'անգիտանան այդպիսի եղելութիւն մը, որ շատ կարեւոր միջադէպ մը պէտք էր կազմէր, եթէ իրական ըլլար։ Հարկ կը զգանք նաեւ մատդրութիւն հրաւիրել գաղղիերէնին մէջ տեսնուած անճշդութեանց վրայ, որ ընդունելով հանդերձ թէ մահուանէ քանի մը վայրկեան առաջ գրած է այդ դաւանագիրը, և անոր կաթողիկոսութեան տասնուվեցերորդ տարին է, զայն յօթանասուն տարեկան և չորս ամսական կը հաշուէ (ԱՋԱ. 126), և 1670 տարին թուական կը դնէ (ԱՋԱ. 128) 1680'ին կատարուած մի բանին, որ տպագրական սխալ ալ չէ, վասնզի յառաջ բերող հեղինակն ալ իբր 1670 թուոյ [illegible] կը ներկայացնէ (ԱՋԱ. 124)։ Այս այսպէս ըլլալով հանդերձ՝ երեք տարի ետքը 1673'ին իբր Յակոբէ ի կենդանութեան գրուած գիր մըն ալ կը յիշէ, և հոսկէն աւելի բան մը յառաջ չբերեր (ԱՋԱ. 128), որով նամակի հոսկէ մըն ալ հաւատոյ դաւանութեան զօրութիւն վերագրած կ'ըլլայ։ Ըստ այսմ տրուած բացատրութիւններէն ետքը շատ կը նուազի, լաւ եւս կը ջնջուի, այդ տեսակ գիրերու կարեւորութիւնը, որոնք կեղակարծ ձեռքերով Հռոմ կը ղրկուէին, իսկ իրենց բուն տեղը ոչ իրականութիւն ունէին և ոչ հետք կը թողուին։

**ՄԱՀՈՒԱՆԷ ԵՏՔԸ**

**1796.** Յակոբ Դ Ջուղայեցի կաթողիկոսին անձնաւորութեան և արժանիքին վրայ շատ եւս խորհրդածել պէտք չենք տեսներ, քանի որ պատմութեան կարգին քանիցս դիտողութիւններ ու նկատողութիւններ ալ յառաջ բերինք իւր գործերուն վրայ։ Ութնամեայն անցուցած և ծանրածանր արկածներու մէջ յոգնած ծերունի մը, երբոր առոյգ երիտասարդի պէս ձեռնարկներէ և ուղեւորութիւններէ չքաշուիր, տարօրինակ հոգւոյ զօրութեամբ ճոխացեալ կերպարան մը կը ներկայացնէ բստ ինքեան։ Յակոբ նախանձայոյզ եկեղեցական և նախանձախնդիր հայրապետ մը լինելով հանդերձ, իւր մտադրութիւնը կը սեւեռէ ոչ միայն կրօնական և կրթական բարեկարգութեանց վրայ, այլեւ ուշադրութիւն կը դարձնէ

ազգին ապագային վրայ, և անոր կենցաղական ու քաղաքական վիճակն ալ իր ջանքերուն առարկայ կ'ընէ, և դուրսէն հովանաւորութիւններով ու նիւթական օգնութիւններով կը խորհի ազգին անկեալ կացութիւնը բարձրացնել, և արկածեալ վիճակը երջանկացնել։ Յակոբ այդ նպատակով բանակցութիւններու ալ կը մտնէ, համամիտներ կը ճարէ, խորհրդակցութիւններ կը կատարէ, և պէտք է որ նշանակելի միտք մը և գնահատելի սիրտ մը ճանչցուի։ Եթէ իր ծրագիրը չարդիւնաւորուիր, այն ալ դարձեալ իրեն համար արժանաւորութեան փաստ մըն է, զի խոհական չափաւորութեամբ գիտէ զիջողութեանց սահմաններն ալ ճշդել, և չուզեր անոնք անցնիլ՝ իր եկեղեցւոյն ինքնութիւնը և իր ազգին իսկութիւնը ոտնակոխ ընելով։ Ժողովուրդը, որ ստէպ իր յարգանքը կը կշռէ, ոչ այնչափ բարձր միտքերու տեսութիւններով, որչափ զգալի բարութեան ու առաքինութեան, պարկեշտութեան ու բարեպաշտութեան պարագաներով, ամէնէն զօրաւոր վկայութիւնը տուած է իր հայրապետին, անոր գերեզմանը իբրև ուխտատեղի ճանչնալով մահուան առջի օրերէն սկսելով, և անկէ ակնունելով և ընդունելով երկնային շնորհաց պարգևներ։ Քանաքեռցին կը վկայէ, թէ Յակոբի գերեզմանը ունէ սքանչելիս և բժշկութիւնս, և որովհետև երկուշաբթի եղած է թաղման օրը, յամենայն երկուշաբթի առնեն պատարագ ժողովուրդն Ղալաթիոյ, և գնան ի գերեզմանն հայրապետին, զի ծաղկազարդ գան յոտս և օծանեն զգերեզմանն, և տան խաչհամբոյր։ Եւ կը յաւելու թէ և եգնացի անդ և երիս պատարագ առնել (ՉԱՔ. Բ. 91)։ Այդ առթիւ կը պատմէ թէ նշանաւոր Տաճիկ մը, իշխան մեծ առաջի վեզրին, Փիր Նաղուպի այսինքն Յակոբ կաթողիկոսի հրաշքով անդամալուծութենէ բժշկուելով, անոր գերեզմանին ծառայութիւն կ'ընէր (ՉԱՔ. Բ. 92)։ Յակոբի գերեզմանին ուխտաւորութեան սովորութիւնը մինչև այսօր կը շարունակէ՝ Հոգևոր-Տէրի անունով, բայց շաբաթ օրեր. թէպէտ չենք գիտեր թէ երբ փոխուած է սկզբնական երկուշաբթի օրը։ Գուցէ ամենօրեայ պատարագի հին սովորութեան դադրելուն, և շաբաթ օրեր պատարագ մատուցանելու նոր սովորութեան հետևողութեամբ։ Հոգևոր-Տէրին գերեզմանը մեծ հռչակ ունեցաւ վերջերս Բերայի գերեզմանատունին գրաւումը արգելելով, երբ որոշում տրուեցաւ զայն մերձակայ զօրանոցին մարզանքի հարթավայր դարձնել։ Եւ այս օրերս ալ (1912 մարտ) նորէն նկատողութեան առարկայ դարձաւ, երբ անոր մօտը ամփոփուեցան այն ոսկերոտիքը, որոնք հանուեցան գերեզմաննոցին երկայնքին վրայ ետ քաշուած մասէն, զոր պէտք եղաւ քաղաքապետութեան յանձնել, Բանկալթի կոչուած մեծ փողոցը ընդարձակելու համար։

**ՅԱՋՈՐԴՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐԸ**

1797. Յակոբի ուղեկից և գործակից եղող պատգամաւորութեան երեք եպիսկոպոս և երեք աշխարհական անդամները (ՉԱՄ. Բ. 34). իրենց պաշտօնը վերջացած նկատեցին կաթողիկոսին մեռնելովը, և որոշեցին ետ դառնալ։ Աշխարհականներէն մէկը միայն, Պռօշ իշխանին որդին Իսրայէլ Օրի՝ ետ չդարձաւ, այլ ճանապարհը շարունակելով անցաւ Վենետիկ, և անկէ Գաղղիա, զինուորութիւն ուսանելոյ համար (ԼԷՕ. Ա. 243), առաջինը ըլլալով Հայերու մէջ շատոնց մոռցուած ասպարէզին հետևիլ։ Վերջին ատենները՝ միայն տպարան բանալու կամ կրօնաւոր ըլլալու կամ առևտուր ընելու համար՝ Հայեր Եւրոպա կ'անցնէին։ Երբոր Յակոբ կաթողիկոս Կ-Պոլիս կը հիւանդանար և կը վախճանէր, Եղիազար արդէն Երուսաղէմէ մեկնած էր, իր խոստման համաձայն, և Կ-Պոլիս մօտեցած ատեն լսեց Յակոբի մահը, և չուզեց յառաջել, ճամբան փոխեց և Երուսաղէմ դարձաւ (ՉԱՄ. Գ. 719)։ Յակոբի մեռնելովը ոչ միայն կը դադարէր Կ-Պոլիս գալուն նպատակը, այլև Եղիազարի դիրքը կրնար անակնկալներու հանդիպիլ, գուցէ և վտանգուիլ, մինչ Երուսաղէմի մէջ կազմուած դիրք մը ունէր, և այնտեղէն տիրաբար կրնար իր գործերը կարգադրել, ունեցածը պահել, գուցէ և լաւագոյն դիրք մըն ալ կազմել։ Կաթողիկոսը աթոռէն հեռու մեռած ըլլալով, Էջմիածինի միաբանութիւնը առիթ չունեցաւ, կամ թէ չհամարձակեցաւ, քանի մը օր-

ուան մէջ յաջորդն ընտրել և նստեցնել, ինչպէս եղած էր Յակոբի ընտրութեան ատեն (§ 1723)։ Ներքին կառավարութեան գլուխը միայ Ստեփանոս Իվլովցի եպիսկոպոսը, որ Յակոբի մեկնած ատեն իբր փոխանորդ նշանակուած էր, և միանգամայն եւ ծերութեան հասակին մէջ, տեղապահ նկատուեցաւ (ՀԻՊ. 296)։ Միաբանութիւնը խոհական ուղղութեամբ սպասեց որ Կ-Պոլսոյ հետ համաձայն կերպով գործէ։ Բայց այնտեղ ալ բաժնուած էին կարծիքներ, և գլխաւոր խնդրոյ նիւթ Եղիազարի անձն և անոր հակաթոռ կաթողիկոսութեան դիրքն էր, որուն աւելի գործունէութիւն և ընդարձակութիւն տալ սկսած էր Եղիազար Յակոբի մահուանէն ետքը։ Մայրաքաղաքին մէջ բազմաթիւ ազդեցիկ կուսակիցներ ունէր, որոնք ամիթր նպաստաւոր կը գտնէին անոր ձգտումներուն գոհացում տալ, և պէտք է ըսել թէ Յակոբ կաթողիկոս իր վերջին անգամ Կ-Պոլիս գտնուած ատեն շատ մեղմ կերպով սկսած էր խօսիլ և վարուիլ Եղիազարի նըկատմամբ, մինչև իսկ շատ հաւանական է, որ ինքն տեղի տալու և հրաժարելու մտադիր էր, մանաւանդ եթէ այդ նպաստաւոր ըլլար իր մեծ գաղափարին։ Արդէն բացատրեցինք վերջին հրաւիրագիրին ոճը և Կաֆացիին հրաւիրակ յղուելուն կէտերը (§ 1791)։ Կ-Պոլսոյ պատրիարքութեան աթոռին վրայ կը գտնուէր Կրպոյ Խաչատուր (§ 1791), որ թէպէտ 1680 տարւոյն մէջ, Յակոբի մահուանէ քիչ ետքը պատրիարքութենէ հեռացուած էր, և Թորոս Կոստանդնուպոլսեցի, Քէօմիւրճեանէ Մորուս կոչուած երէցը (ՄԽԻ. 29) աթոռ գրաւած էր (09 ՕՐԱ. 111), սակայն Կրպոյ 40 օրէն կրցած էր զայն տապալել, և երրորդ անգամ պատրիարքութեան բարձրանալ (ՁԱՄ. Գ. 721)։ Կրպոյ յայտնի համամիտ կը սեպուէր Եղիազարի կողմին, և Էջմիածինի հետ ալ բանակցութիւնք կը շարունակէին 1681 տարւոյն ընթացքը։ Անհնար էր որ ինքն Եղիազար ալ իր մասին պէտք եղած ճիգերը թափած և միջոցները գործածած չըլլայ։ Վերջապէս Մայրաթոռոյ միաբանութիւնն ալ համոզուեցաւ, որ թէ եկեղեցւոյ խաղաղութեան տեսակէտէն, և թէ միաբանութեան նիւթական օգտին տեսակէտէն, նպաստաւոր էր ճարտար ու կարող և ունեւոր Եղիազարին Էջմիածին գալուն։ Ուստի հաւանեցան այդ որոշման, Պարսիկ կուսակալն ալ համոզեցին, և Պարսիկ արքունիքին հրովարտակն ալ առացան, և այս կերպով աթոռին յաջորդութեան խնդիրը լուծուեցաւ 1691 յուլիսին, տարի մը վարանոտ վիճակէ ետքը, բայց դեռ բաւական ատեն անցաւ, մինչև որ Մայրաթոռը իր նոր գահակալը տեսնար։

**1798.** Այդպէս է սովորական աղբիւրներէն քաղուած պատմութիւնը, սակայն վերջին օրերուն մէջ Երուսաղէմի մատենադարանապետ Մեսրոպ Նշանեան վարդապետ, պարապութեան միջոցին համար Սահակ անունով կաթողիկոսի մը խնդիրը մէջտեղ հանեց (12 ՏԱՃ. 369)։

**ԿԱՐԾԵՑԵԱԼ ԿԱԹՈՂԻԿՈՍ ՄԸ**

Նա գտեր է որ 1680 օգոստոս 10'ին, այսինքն Յակոբի վախճանէն ինն օր ետքը գրուած նամակի մը մէջ, երկու վարդապետներ՝ Գրիգոր Կեսարացի և Աստուածատուր՝ Կ-Պոլիսէ Երուսաղէմ գրեր են թէ Յակոբ իրեն յաջորդ ցուցած է «զՍահակ վարդապետն», և թէ նոյն ինքն Եղիազարի և Մարտիրոս Կաֆացիին յանձնարարած է «հոգւղոյ»։ Իսկ Քէօմիւրճեանն Յակոբի վրայ գրած ողբին մէջ տեղ մը ըսեր է, թէ «զՀայրն արարեալ, զոր Սահակն ընտրեալ է»։ Ուրիշ տեղ մըն ալ գրեր է, թէ Էջմիածինի մէջ «շնորհօք սուրբ հայրապետն Մեծարէն յաջորդն սուրբ նախնի, և մեզ տէր Մխիթարանոց օրհնութեամբ Ներսէս ժամանի» (12 ՏԱՃ. 370)։ Բայց խնդիր է գիտնալ թէ այդչափը կը բաւէ՞ արդեօք նոր անուն մը աւելցնելու, հայրապետական ցուցակին մէջ։ Մեր տեսութեամբ Յակոբի կտակը փափաք մըն է և ոչ եղելութիւն, և իրականութեան փաստ չէ, քանի որ Յակոբ ինքն ալ գործը նախատեսած է, և հաւանած է որ «զիւր կամն՝ ընտրեալ Տէրէն յաջորդն» (12 ՏԱՃ. 369)։ Կը մնայ մեկնել Էջմիածինի «ռաբունեաց խմբին» գործը, որ Սահակը «Մեծարէն յաջորդն», և անկէ եկած՝ «տէր Մխիթարանոց օրհնութեամբ» բռուածը (12 ՏԱՃ. 370)։ Սակայն պէտք չենք զգար, «Մեծարէն» բռուածը օծում իմանալ, և «տէր Մխիթարանոց» ըռուածը, հայրապետական անդրանիկ կոնդակ իմանալ։ Միաբանու-

թիւնը կրնայ պատուոյ ցոյց րրած րլլալ, և Սահակը իւր հայրապետութեան տեղակալ ճանչնալ, և Կ-Պոլիս ալ միխիթարութեան գիր ղրկել Յակոբի մահուան վրայ, բայց թէ Սահակ և թէ միաբանութիւն իրաւամբ սպասած կ'րլլան, որ տիրող երկպառակու-թիւնը և հակաթոռութեան կնճիռը փակուի, և այնպէս պաշտօնական ծիսակատարութեանց անցնին: Այս բանին ստուգութիւնը կր քա-ղենք, Կաֆացիին էջմիածին լուր ղրկելէն, որ մի՛ տացէ թոյլ հարցանելոյ այլր կողմանց առնել կաթողիկոս (ՁԱՔ. Բ. 106): Տարի մը ետքն ալ, 1781 յուլիս 21'ին, միաբանութեան Եղիա-զարի գրած նամակին մէջ Սահակի անունը չկայ, և աթոռը բոլորովին ղատարկ ցուց-ուած է (ՍՏՈ. 111): Եթէ Սահակի մը էջ-միածին կաթողիկոս նստած րլլալը ստոյգ րլլար, պէտք չէր զայն լսեր Բանաքեռցին, և ոչ ալ զայն պիտի զանց րնէին Երեւանե-ցին և Շահխաթունեան, որոնք կաթողի-կոսներու յաջորդութիւնը կազմած են էջ-միածինի դիւանին և յիշատակներուն հե-տեւողութեամբ, և Սահակի գոյութիւնն իսկ կ'անգիտանան: Հետեւապէս Բէօմիւր-ճեանի ողբին անորոշ մէկ բացատրութիւնը բաւական չենք սեպեր նոր կաթողիկոս մը հաստատելու, և զայն անմիջապէս թուա-համարի ներքեւ ալ առնելու, ինչպէս կ'ա-ճապարէ բնել Նշանեանը (12 ՏԱՃ. 371): Սահակի անունը րնդունողներ, պէտք էր նախապէս պատմութենէ ստուգէին թէ ով ո.ք էր այդ Սահակը, որ թերեւս ամէնէն առաջ տեղապահութեան կոչուած Սահակ Մակուեցին րլլայ (§ 1759), յետոյ Ատրպա-տականի առաջնորդ, ուսկից ետքը Մատ-թէոս եղաւ տեղապահ, և վերջին անգամ ալ Ստեփանոս Ըլվովացին էր այդ պաշտօնը վա-րողը (§1797): Ասկէ զատ պէտք էր պարզել թէ, ինչպէս եղաւ Սահակի կարծեցեալ կա-թողիկոսութեան վախճանը, թէ ինչպէ՞ս դադարեցաւ, և ի՞նչ հանգամանքներով ինքն մերժուեցաւ որ Եղիազարի տեղ բացուի: Ասոնցմէ յառաջ բերուած վկայու-թիւններէ կրնար քաղուիլ, թէ Սահակ՝ որ Յակոբի կողմէն կաթողիկոսացու ցուցուած էր, Մայրաթոռոյ տեղակալութիւնը վարողն էր Յակոբի մեկնելէն ետքը, թէպէտ Ըլ-վովցին յիշուած է իբրեւ տեղապահ, կամ

թէ Ատրպատականէ տեղապահութեան կոչ-ուեցաւ Յակոբի մահուանէ ետքը: Մեր պատճառաբանութեան եզրակացութիւնը կը հաստատեն ուրիշներն ալ, թէ Սահակ ա-ռաջնորդ Ատրպատականի, Յակոբէ ցուց-ուեցաւ մահուընէ 10 տարի առաջ, բայց չընտրուեցաւ, և թէ ինքն ալ [illegible] Այս առթիւ նորէն Սահակն ալ [illegible] ցուցնելու ջանքեր կը կրկնուին (12 ԱՄՍ. 579), սակայն Սահակ ալ Յակոբի նման, առանց իւր հայադաւանութիւնը զո-հելու՝ գինքն րնդհանուր եկեղեցւոյ միու-թեան մէջ ճանչցող մը եղած կ'րլլայ,

**1799.** Եղիազարի օրինաւոր կաթողի-կոսութեան միջոցին չանցած, պէտք է որ մեր սովորութեան համե-

**ՄԽԻԹԱՐ ՎԱՆԵՑԻ**

մատ քաղենք վերջին ժա-մանակամիջոցին նշանա-ւոր դէմքերուն յիշատակները, և ուրիշ ազգային եղելու-թիւններ՝ որոնք րնդհանուր պատմութենէն անջատ կը մնան: Ժամանակագրական կար-գով նախ յիշենք Մխիթար Վանեցին, որ խելօք, կորովի, քաջաբան, յեռանդ, ընթերցող, և ուսումնական երիտասարդ մըն էր, և այս պատ-ճառով այլազգի իշխաններէն և զինուորա-կաններէն ալ սիրուած (ԴԱՎ. 421): Օր մը որ Մխիթար տանը մէջ երգով ու քնարով ուրախական ակումբ մը ունէր, այլազգի տղաներ տունը կը պատեն և անհանգիստ կ'րնեն: Մխիթարին հայրը ցրուելու կ'եր-թայ, իսկ տղաքներ անոր կը զարնեն: Մխի-թար բարկանալով տղայոց ետեւէն կ'իյնայ, և ոչ միայն կը հալածէր, այլ հայհոյաբանէր անարգէր [illegible] տղայոց, և չէր ալ լսեր երբոր Տաճիկներէն ոմանք իրեն կ'աղդարարէին: Կրօնամոլ խումբ մը զինքը ձերբակալելով կը բանտարկէ, Ենիչէրիները կ'ազատեն, և միջոց մը իրենց մօտ պահելէ ետքը կ'արձակեն: Սակայն կրօնամոլներ նորէն կը ձերբակալեն և դատաւորին կը տանին, բայց սպանութեան հրաման չեղլա-լուն, [illegible] քաղաքին մէջ կը պտտցնեն՝ ծե-ծելով, նախատելով, տանջելով, և ուրա-ցութեան ստիպելով որ ազատի: Մխիթար արիութեամբ կը մերժէր, մանաւանդ թէ

իր քրիստոնէութիւնը կը փաստարանէր, ատանց միտք դնելու ազգականներու և բարեկամներու աներևոյ ուրացութեան յորդորներուն, ոչ ալ կուսակալին խոստումներուն։ Միխիթար համապազոր նորոգուած ձաղանքէն և սանջանքէն և չարչարանքէն չէր տկարանար, մինչեւ որ օր մըն ալ [illegible], այսինքն է կարդացողներէն մէկը առաջին անգամ սուրով կը զարնէ, ընկերներն ալ կը հետեւին, և փողոցին մէջ կը սպաննեն, տաքը չուզան անցնելով քաղաքէն դուրս կը քաշկռտեն, և դիակը կը քարկոծեն և քարերու ներքեւ կը ծածկեն։ Միխիթարի նահատակութիւնը տեղի ունեցաւ 1656 նոյեմբեր 12'ին, և միւս օր հրաման ստանալով մարմինը հանդիսով թաղեցին ի [illegible] Հայոց (ԴԱՎ. 424)։ Միխիթարի մահուան թուականը, հայկական տարեթիւով 1105 գրուած ըլլալուն, և այդ տարւոյ սմանորը 1655 հոկտեմբեր 9'ին իյնալուն, ոմանք Միխիթարի նահատակութիւնը 1655 նոյեմբեր 12'ին կը դնեն (ՆՈՐ. 472). սակայն չենք կարծեր թէ պատմիչը ճշդութեամբ միտք դարձուցած ըլլայ հնաւանդ սմանորին, քանի որ ամսաթիւն ալ հայկականով չէ գրուած։

**1800**. Ուրիշ Վասպուրականցի նահատակ մըն ալ Աւետիս Ոստանցին է, որ աղքատ չինական ըլլալով,

ԱՒԵՏԻՍ ՈՍՏԱՆՑԻ

ապրուստի կարօտութենէն Աղբակի Բաշլասան գիւղը կը փոխադրուի ընտանեօք, և Լօռի.քան բերդի տէր Բաքտար քուրդ իշխանին ծառայութեան կը մտնէ (ԴԱՎ. 425)։ Իր այլազգի ծառայակիցներ, Նախանձեալ ընդ նա, սուտ ամբաստանութիւն կ'ընեն իրենց տիրոջ, թէ Աւետիս մահմետական ըլլալ խոստացած է. բայց Բաքտար ականջ չկախեր։ Ասոր վրայ կը դիմեն գըլխաւոր իշխան Խոսրէվ փաշային, և երբ ան ալ Աւետիսը հարցափորձելով զըպարտութիւն ըլլալուն կը համոզուի և կարեւորութիւն չտար, այս անգամ իրենց համատակիցներու մոլեռանդութիւնը կը գըրգռեն, որոնք կ'առնեն բռնի իրենց հետ կը տանին Աւետիսը, և առաջ պատիրներով, զգեստներով և համոզումներով կը փորձեն չահիլ որ ուրանայ. և երբ կը մերժէ, բռնադատիքներու կը ձեռնարկեն, և սուրերու ծայրերով մարմինը կը ծակոտեն, այնպէս որ մարմնոյն վրայ [illegible], և բոլորովին արիւնլուայ Փիզանի հրապարակը կը տանին ու կը գըլխատեն 1656 մարտ 20'ին։ Մարմինը իշխանէն յանձնուեցաւ եղբօրը Թափառւկ Ոստանցիի, որ եկեղեցական արարողութեամբ թաղել տուաւ Սաւի գիւղի գերեզմանոցը (ԴԱՎ. 428)։

**1801**. Գաբրիէլ Ղալաթիացի էր ծնընդեամբ, թէպէտ ծնողքը Տիվրիկի Խուռնավիլ գիւղէն էին։ Գաբրիէլին եղբայրը տաճկացած և Ենիչէրի գնուոր էր,

ԳԱԲՐԻԷԼ ՂԱԼԱԹԻԱՑԻ

Գաբրիէլն ալ անոր կ'այցելէր մերթընդմերթ, և այդ կերպով ինքն ալ համակերպեցաւ թլփատուիլ և Ենիչէրի գրուիլ, և Կրէտէի պատերազմներուն մէջ ալ գտնուեցաւ։ Սակայն սիրտը հանդարտ չէր, քրիստոնէութեան դառնալու համար Եւրոպա կը փախչէր, և 12 տարի այն կողմեր կը շրջէր։ Ս. Յակոբ առաքեալի և Ս. Պետրոս ու Ս. Պօղոս առաքեալներուն ալ ուխտի կ'երթար (ՆՈՐ. 484), որ ըսել է Սպանիոյ Գոմփոսթէլլա և Իտալիոյ Հռոմ քաղաքները կ'այցելէր։ Բայց միշտ խիղճը կը խայթէր, ուստի ուրացութիւնը և տուած դայթակղութիւնը քաւելու փափաքով Կ-Պոլիս կը դառնայ 1662 օգոստոսին։ Քիչ մը ատեն ծնողաց տունը փակուած կը մնայ Ղալաթիա, և սեպտեմբեր 14'ին Խաչվերացի օրը կ'երթայ ի գերեզմանս Հայոց (ՆՈՐ. 485), որ Բերայինը եղած կ'ըլլայ, և երկուշաբթի եկեղեցի կ'երթայ, անշուշտ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչը, կը խոստովանուի և կը հաղորդուի։ Երեքշաբթի չուկայ ելլելուն կը ճանչցուի, և իբր մահմետականութենէ ետ դարձող ատեան կը հանուի, և հաւատքին հաստատուն ըլլալուն կը բանտարկուի, և միւս օր կրկին հարցափորձէ ետքը կախաղանի կը դատապարտուի, և կը կախուի [illegible], որուն տեղը ճշդել դժուար է։ Նահատակութիւնը տեղի ունեցած է 1662 սեպտեմբեր 17 Խաչին չորեքշաբթին, իսկ մարմինը երկու օր կախաղանի վրայ թողուելէ ետքը ուրբաթ աստու ծովը կը նետուի (ՆՈՐ. 489)։

**ՊԱՏՈՒԱԿԱՆ ԱՐՓԱՅԵՑԻ**

**1802**. Վայոցձոր գաւառի Արփա գիւղին մէջ Խաչիկի նորահաս աղջիկը Աղիզ, կամ աւելի ուղիղ Ազիզէ, իսկ հայերէն կոչմամբ Պատուական, նշանուած էր Միրիման անուն երիտասարդի մը, որ [illegible] ընդ նմա, և ժամանակը լրանալուն Պատուական զաւակ մը ունեցաւ։ Զայնը տարածուեցաւ, Մուրատ խան Նախիջեւանի կուսակալը ուզեց երիտասարդը ձերբակալել, բայց նա փախաւ, ուստի աղջիկը բռնել տուաւ։ Երբ կը յանդիմանէր զայն իբրեւ բոզ ու պոռնիկ, Պատուական ինքզինքը պաշտպանեց՝ իրարու նշանուած ըլլալնուն պարագայով. բայց Մուրատ զայն իւրացնելու դիտմամբ ուրացութիւն առաջարկեց, որ պատիժէ ազատի։ Աղջկան հաստատամտութիւնը քանիցս փորձելէ ետքը, վերջապէս կը հրամայէ որ մէջքէն կապելով մզկիթին մինարէյէն կախեն, և այնտեղ սպառնալեօք ուրացութիւն առաջարկեն, և եթէ նորէն չի հաւանի, չուանը կտրելով վար թողուն. ինչպէս որ ալ ըրին, և բարձրէն իյնալով նոյն տեղը նահատակուեցաւ։ Պատուական Արփայեցիին նահատակութեան թուական նշանակուած է 1669 (ՋԱՔ. Բ. 128), իսկ օրը ճշդուած չէ։

**ԲԱՂՏԱՍԱՐ ԵՒԴՈԿԻԱՑԻ**

**1803**. Բաղտասար Եւդոկիացի նահատակուած է ի Կարին։ Պատմական պարագաները շատ քիչ տարբերութեամբ կը գտնենք թէ յատուկ վկայաբանէ մը (ՆՈՐ. 490) և թէ Քանաքեռցիէ գրուած (ՋԱՔ. Բ. 120), բայց աւելի ճիշդ կը կարծենք առաջինը, զի Քանաքեռցին կը խոստովանի թէ [illegible] ընկեր նահատակին, և [illegible] (ՋԱՔ. Բ. 124). մինչ առաջինը իբր ականատես իր գիտցածը կը գրէ կատարեալ մանրամասնութիւններով։ Բաղտասար պզտիկ տարիքին մէջ հօրմէն որբ կը մնայ, և իւր մեծ եղբօր Անտոնի կողմէ կօշկակարի մը քով կը դրուի, և անոր հետ Զմիւռնիա կ'երթայ։ Այնտեղ բռնութեամբ զինքը կ'իսլամացնեն և կը թլփատեն 13 տարեկան եղած ատեն (ՆՈՐ. 490), սակայն տղան դժկամակ ըլլալով, քրիստոնէութեամբ ապրելու նպատակով Եւդոկիա կը դառնայ՝ նոյն իսկ կօշկակար վարպետին խորհուրդով (ՋԱՔ. Բ. 121), բայց այնտեղ ալ մայրն ու եղբայրները կը կասկածին, և կը յորդորեն որ Օսմանեան սահմաններէն ելնէ, և էջմիածինի կողմերը երթայ, ինչպէս որ ալ կը կատարէ։ Մայրտաճարը ու զանազան վանքեր ուխտի կը պտտի, և վերջապէս վանքի մը մէջ կը հաստատուի, որուն անունը յիշուած չէ, ու 7 տարի կը մնայ (ՆՈՐ. 491) Զաքարիա վարդապետի մը մօտ (ՋԱՔ. Բ. 122), սաղմոս ու շարական սորվելով և վանքին ծառայելով։ Վարդապետին մահուընէ ետքը, նոյն վանքը կը թողու, և 2 տարի եւս շրջելով [illegible], վերջէն Երեւանի մէջ քրիստոնեայ կօշկակարի մը մօտ աշխատելու և վաստկելու կը մտնէ (ՆՈՐ. 491)։ Այնտեղ կը ճանչցուի Եւդոկիացի Հայէ մը, ուսկից կը լսէ Կարնեցի Տաճիկ մը, և միտքը կը դնէ խարկանօք պատանին Կարին տանիլ, և այնտեղ իսլամութեան վերադառնալու ստիպել։ Այս միտքով, իբրեւ թէ Եւդոկիացի ըլլար, և պատանին իրեններուն դարձնելու յանձնարարութիւն ունենար, կը համոզէ միասին ուղեւորիլ. անոր ունեցած դրամներն ալ ձեռքէն կ'առնէ, և Կարին հասնելնուն իւր միտքը կը գործադրէ, և Բաղտասարին իսլամացած ըլլալը Եուսուֆ կուսակալին կը հաղորդէ (ՋԱՔ. Բ. 122)։ Երբոր լուրը մէջտեղ կ'ելլայ, Բաղտասար հոգեւորապէս զօրանալու համար խելոյն կը խոստովանուի և կը հաղորդուի [illegible], որ է ըսել 1672 մայիս 19'ին։ Բաղտասար կը ձերբակալուի, և առաջին հարցափորձէ ետքը կը բանտարկուի, ուր նորէն կը հաղորդուի Յակոբ քահանայի մը ձեռքով (ՆՈՐ. 492), [illegible] (ՋԱՔ. Բ. 124)։ Չորս օր ետքը կրկին կը հարցափորձուի, և արիաբար քրիստոնէութիւնը խոստովանելուն վրայ, գլխատման վճիռ կը տրուի, և կը տարուի Կանայ դուռնէն դուրս (ՆՈՐ. 493) ի Բլուրն որ առ Սուրբ Նշան (ՋԱՔ. Բ. 124), և կը գլխատուի Գայիանեանց տօնին երեքշաբթի օրը, 1672 յունիս 4, ժամը 6'ին (ՆՈՐ. 494). իսկ Քանաքեռցիի համեմատ, 1664 Հռիփսիմեանց տօնին օրը ժամը 8'ին (ՋԱՔ. Բ. 124), որ կը հանդիպի յունիս 7'ին։

Այլ ինչպէս ըսինք, կը նախադասենք առաջին վկայաբանին գրածը, թէպէտեւ Քանաքեռցին ալ կ'ըսէ, թէ ի ժամ նահատակութեան սրբոյն ոչ պատահեցայ, այլ ի վաղիւն հարցի զԹորոս ընկեր նորա (ՋԱՔ. Բ. 124), որով գոնէ իւր Կարին գտնուած թուականը ճշդութեամբ նշանակած պէտք կ'ըլլար ենթադրել: Բաղտասարի տարիքը, թէպէտ իբր դատանէ կը յիշուի (ՋԱՔ. Բ. 126), այլ 13 տարեկանին փորձանքի հանդիպած, 7 տարի մնացած, 2 տարի եւս չրջած, և վանք մը զանազան ուղեւորութիւններ ըրած ըլլալը հաշուելով, իբր 25 տարեկան չափահաս երիտասարդ մը եղած պէտք է ըլլայ: Նահատակին մարմինը թաղուած է Կարին ի հարաւակողմն եկեղեցւոյն, ի Ներքոյ որմոյն (ՋԱՔ. Բ. 124), ուր ցարդ կը տեսնուի գերեզմանի քարը, առանց արձանագրութեան, բայց միշտ իբրեւ նահատակի գերեզման պատուուած Կարնեցիներէն:

**1804.** Ուրիշ Կարին կատարուած նահատակ մըն է Յակոբ Կարնեցի, Ղուլիկեան ազգատոհմէն (ՆՈՐ. 500),

ԿԱՐՆԵՑԻ
ՎԿԱՆԵՐ

Թորոս Պօղիկէնց որդի իբր ողորմածութեան մէջ գտնուող հօր որդի, զի ինքն ալ Ճէլէպի կը կոչուի (ՋԱՔ. Բ. 125), այսինքն է թաղականութեան սպասաւոր: Սուտ վկաներ կ'ամբաստանեն թէ խոստացաւ տաճկանալ, և ամբողջ Ցինանց միջոցին բանտարկել և սոսկալի չարչարել և երեք անգամ առեան հանել ետքը, կը քարկոծեն նոյն Ս. Նշանի վրայ, ուր զԹորոսն ողջունէին, 1673 Գայիանեանց տօնին օրը (ՆՈՐ. 500), որ է ըսել մայիս 27'ին: Իսկ Քանաքեռցին Բաղտասարէ 3 տարի ետքը կը դնէ Յակոբի նահատակութիւնը, որ կ'ըլլայ 1667'ին, և գերեզմանը մերձ ի գերեզման Թորոսոյն (ՋԱՔ. Բ. 125). բայց մենք առաջին հաշիւը կը պահենք, իբրեւ աւելի վաւերական աղբիւրէ քաղուած: Իսկ գերեզմանին մասին յայտնի նշան մը չյիշուիր, գուցէ Կարնոյ Տաճարին եռեւի մասին մէջ գտնուի: Ուրիշ Կարնեցի մըն ալ նահատակուած է Կ-Պոլսոյ մէջ, ընիկ Կան գիւղէն, զբաղմամբ բեռնակիր, որուն միայն նահատակութեան օրը նշանակուած է 1682 մայիս 19, իսկ պարագաները չեն պատմուած (ՋԱՄ. Գ. 656): Առանցմէ զատ 1673'ին վկայած են երեք անանուն նահատակներ ալ, մին Կարնեցի, երկրորդը Սեբաստացի, և երրորդը Բէօբրիւքէօյցի, որ թէպէտ յումանց Կամուրջ գիւղ թարգմանուած է (ՋԱՄ. Գ. 656), այլ պէտք է իմանալ Բասէնի Բէօբրիւքէօյ գիւղին վրայ, որ է հին Վաղարշաւանը:

**1805.** Գրիգոր Տաթեւացի կոչուած և գեղեցիկ տեսով մանուկ մը, բնիկ Տաթեւ գիւղէն, Մշոյ Ս. Կարապետի

ԳՐԻԳՈՐ
ՏԱԹԵՒԱՑԻ

ուխտի եկած ըլլալով, տեղացի այլազգիներէն կը բռնադատուի ուրանալ, հարկաւ իրենց հաճոյից ծառայեցնելու համար: Երբոր ոչ ողոքանքներով և ոչ խոստանգանքներով չեն կրնար մանուկը հաւանեցնել, սաստիկ կը չարչարեն, և գլուխը կտրելով կը նահատակեն 1676'ին, իսկ մարմինը վանականներ վերցնելով կը թաղեն յեղը գերեզմանատան վանիցն Ս. Կարապետի (ՋԱՄ. Դ. 655), զոր պէտք չէ իբր գերեզմանոցէ դուրս իմանալ, այլ մեծ գերեզմանոցին ծայրը, ուր նշանաւոր անձեր ալ թաղուած են:

**1806.** Դաւիթ Մելքոնեան Սեբաստացի երիտասարդ մըն էր ամաց իբր ԻԱ այսինքն 21 տարեկան (ՆՈՐ. 505), աղքատ և անուս,

ԴԱՒԻԹ
ՍԵԲԱՍՏԱՑԻ

որ Սիւաճ չէլեպին բաղնիքը վարպետ դելլակ էր, միակ քրիստոնեայ բոլոր Տաճիկ սպասաւորներուն մէջ: Անգամ մը չարաթական հասոյթներին բաշխած ատենին ընկերները Դաւիթին կը ձայնեն, Մելքոն կեավուր, էկ և ա, և Դաւիթ զայրանալով կը պատասխանէ, ո՞վ էյէ կեավուր, էս Երզնէ գեաւ (ՆՈՐ. 505): Այս պատասխանին առաջին մասը մեկնելով, և իբր թէ կեավուր չեմ ըսել, իսլամ եմ ըսել ըլլայ, բաղնեպանները չեխին կը խօսին թէ, Դաւիթ իսլամութիւն ընդունած է, և վկայութիւնին երդումով կը հաստատեն: Դաւիթ կ'ուրանայ ասանկ բան մը ըսած ըլլալը, և չեխը իբրեւ ապաւէլու միջոց իսլամութիւն ընդունիլը կ'առաջարկէ: Ասկէ կը սկսին Դաւիթի հարցափորձերը չեխին և դատաւորին և կուսակալին ատեանները, և իգործ կը դրուին բանտարկութիւններ և

չարչարանքներ, ինչպէս աքցաններով մարմինը կտտել, գլխիվայր կախել, մէկ ձեռքէն կախել, բրածեծ տանջել, անօսւաղ պահել, և ուրիշ տեսակ տեսակ չարչարանքներ, որոնք իբր 20 օր չարունակեցին, մինչեւ որ վերջապէս փոսի մը մէջ կիսովի թաղելով և քարկոծելով նահատակեցին, Վարդանանց տօնին օրը, էրէց եա հօրէօրէց, և մին հօրէօրէ, և այլ եա էրէօնէց, եօօ էրկէօօօնէ, այսինքն է 1677 տարւոյ փետրուար էրէկ ճէօօօօնէ, այսինքն 22'ին (ՆՈՐ. 514)։ Մարմինը յօշոտելով շուներու առջեւ նետելու հրաման կը տրուի, բայց քրիստոնեայք հօշա… պմարթնն …րբ ռոֆէոլ՝ պատուով կը թաղեն Սերաստիոյ Սուրբ Քառասունք գերեզմաննոցը (ՆՈՐ. 513)։ Վկայաբանը Միքայէլ Բարղամեան, իրաւամբ կը զարմանայ անոնց և տղէտ բաղնեպանի մը կողմէ յայտնուած անօրինակ արիութեան վրայ (ՆՈՐ. 515)։ Ճատերուն վրայ ալ մեծ տպաւորութիւն գործած է անոր օրինակը, և յատկապէս կը յիշուի Գասպար Սեբաստացին։ Կուսան մականունով ճանչցուած, ուսեալ և տեղեակ եբրայեցերէնի անձ մը, որ 25 տարի առաջ ուրացած էր, և արդէն ուխտաւոր եղած։ Դաւիթի նահատակութիւնը դիտելով, և ինքն իր վրայ ամենալով ընկէց է Բօց գէօկէղն օղէօօկ, և այս պատճառով դատաւորին առեանը հանուեցաւ, և համարձակ քրիստոնէութիւնը դաւանելուն համար, կախաղանի դատապարտուեցաւ, և այնպէս նահատակուեցաւ նոյնիսկ Դաւիթին նահատակուած տեղը, անկէ երկու ամիս ետքը 1677 ապրիլ 22'ին (ՆՈՐ. 519), որ կը հանդիպի Աշխարհամատրան կիրակէին։ Այս տեսակ նահատակութիւններ ուրիշ տեղեր ալ՝ շատ եղած են անշուշտ, այլ մենք միայն յիշատակուածները կրնանք անցընել մեր պատմութեան կարգը։

**1807**. Հայ տպագրութեան պատմութիւնը հասուցինք մինչեւ Ոսկանի մահը (§ 1748), և դիտել տուինք որ 1674'էն ետքը չխափանեցաւ տպագրական ձեռնարկը, ինչպէս եղած էին նախընթաց փորձերը։ Մարսիլիոյ տպարանը իբր ժառանգութիւն մնաց Սողոմոն Լեւոնեան

**ՏՊԱԳՐՈՒԹԵԱՆ ԱՇԽԱՏՈՂՆԵՐ**

քեռորդւոյն, բայց Թադէոս Համազասպեան ալ ընկեր էր. գործին մէջ կը գտնուէին նաեւ Նասիպ Գրիգորեան գործակատարը և Մատթէոս Յովհաննէսեան Վանանդեցի չարաբարդողը կամ գրաշարը։ Ժամագիրքի տպագրութիւնը, որ Թադէոսի քսութեանց պատճառով Ոսկանի մահուան ալ պատճառ եղած էր, Թադէոսի ձեռք նորանոր նենգութեանց առիթ եղաւ, որ կարծես անձնական չահէ աւելի գործին վնասելու կ'աշխատէր (ՏՊԱ. 119)։ Հռոմէ գրաքննիչ դրրկուած Յովհաննէս Յակոբեան, Հոլով մականուանեալ խառնակիչին քննութենէն ետքն ալ, Թադէոս ժամագիրքին դէմ ամբաստանութիւններ կը տեղացնէր պետական և եպիսկոպոսական ատեաններուն առջեւ, իրեն գործակից գտնելով Թովմաս Հայրապետեան քահանայ մըն ալ, որ Մարսիլիա հանդիպելուն եպիսկոպոսարանէն քննիչ նշանակուեցաւ։ Թովմասի չափազանց յատինամոլութիւնն մինչեւ իսկ Գաղղիական կառավարութեան առջեւ նկատողութեան առնուեցաւ, և ատենական հարցաքննութեան ենթարկուեցաւ, իբրեւ Գաղղիական եկեղեցւոյ ազատութեանց դէմ վարուող, և Հռոմի հաւատաքննութեան գործակատարութիւն ընող. և հազիւ կրցաւ ինքզինքը արդարացնել և անդատապարտ մնալ, բայց 1683 փետրուար 25'ին վճռով Հայ տպագրութեանց այլեւս չխառնուելու հրաման տրուեցաւ (ՏՊԱ. 127)։ Այդ եղելութեանց երեսէն շատ նեղութեանց ենթարկուեցան Սողոմոն և Նասիպ և Մատթէոս, թէպէտ նոյն միջոցին Ժամագիրքի, Սաղմոսի, և Հոլովին հեղինակած Ճարտասանութեան, և ուրիշ մանր գիրքերու տպագրութիւնները կրցան աւարտել (ՏՊԱ. 118)։ Պէտք է յիշատակենք ևս Բարսեղ Կոստանդնուպոլսեցի և Յովհաննէս Յակոբեան քահանաներուն Հռոմի մէջ ալ կատարած մոլեկան չահատակութիւնները, որոնք ոչ միայն Հայ ծիսական գիրքերը իրենց անձկամիտ ուղղութիւններով խանգարեցին ու աղաւաղեցին, այլեւ Հայ լեզուն ալ ուղղելու յանդգնեցան, նորահնար հոլովումներով և խոնարհումներով, որուն համար Հոլով մականուն ստացան։ Ասոնց գործը անշահանակ մնացած կ'ըլլար, եթէ Հռոմ տպագրել

տուած չըլլար 1674'ին Հոռոմներու քերականութիւնը, և 1677'ին անոնց աղաւաղած պատարագամատոյցը և ուրիշ ծիսական գիրքեր (ՁԱՄ. Գ. 662)։ Հոռոմներու արտաքոյ քերականութիւնը, ուրիշ տարածեալ դասագիրք չըմնալուն պատճառով, հրապարակի վրայ ազդեցութիւն գործեց, և գրական լեզուին խանգարման մէջ նշանակելի դեր ունեցաւ բաւական երկար ժամանակ։ Այսչափ ինչ Յակոբ կաթողիկոսի օրով կատարուած եղելութեանց մասին։

---

# Տ. ԵՂԻԱԶԱՐ Ա. ԱՅՆԹԱՊՑԻ

**1808.** *Եղիազարի հակաթոռ կաթողիկոսութիւնը, և Յակոբի մահուանէ ետքը անհակառակ գործունէութիւնը, և իր և իրեն կուսակիցներուն ջանքերը,* ՄԱՅՐԱԹՈՌԷՆ ԸՆՏՐՈՒԻԼԸ *նախապէս նոր կաթողիկոսի ընտրութիւնը յապաղեցին, որովհետեւ Սահակ կաթողիկոսի մը գոյութիւնը առեղծուածական ցուցուցինք* (§1798)։ *Երբոր նոր ընտրութիւն չընելու գաղափարը մէջ տեղ ելաւ, հետզհետէ համաձայնութիւն գոյացաւ ապօրինի կաթողիկոսութիւնը օրինաւորութեան վերածել, և Եղիազար Այնթապցին էջմիածինի մայրաթոռին վրայ բազմեցնել։ Այդ մասին նախաձեռնութիւն մըն ալ կ'ընծայուի Կաֆացիին, որ էջմիածին գրեց, թէ մի փութասջիր նորս հաւրցանելոյ տէր կողմանց առնել կաթողիկոս։ Սակայն Կաֆացին իբր պատրիարք յԵրուսաղէմ ճանչնալը* (ՁԱՔ. Բ. 106), *պէտք է իբր երբեմն էր իմանալ, զի նոյն միջոցին, ինչպէս գրեցինք* (§ 1792), *Կաֆացին պատուիրակ գացած էր Եղիազարին և վերադարձած։ Համաձայն այդ առաջարկին վերջնական որոշումը տուաւ Մայրաթոռին միաբանութիւնը, որ կաթողիկոսական ընտրութեանց իրաւասուն դարձած էր Փիլիպպոսի* (§ 1666) *և Յակոբի* (§ 1723) *ընտրութիւններէն ի վեր։ Իրեն որոշումը պետական իշխանութեան ալ ընդունել տալէն ետքը* (§ 1797), *գայն պաշտօնական հրաւիրագիրով մը վաւերացուց, որ 1681 յուլիս 21 թուական կը կրէ* (ՄՏՌ. 111), *և 1680 օգոստոս 1'ին Յակոբի մահուան տարելիցէն 10 օր կանուխ է։ Այդ հրաւիրագիր մեղադրական ակնարկ մը չունի Եղիազարի կանուխէն գործադրած ապօրէն ձրգտումներուն վրայ, և հակաթոռութիւնն իսկ կը նուիրագործէ յերկուս սուրբ աթոռս յեղյեղուլ բաժանում անուանելով* (ՄՏՌ. 109), *և ոչ ալ նորէնոր պաշտօն յանձնելու ձեւը կը գործածէ, այլ կանխագոյն ընտրեալ հոգեւոր հովուէր* (ՄՏՌ. 107), *և Աստուած զԷնոք յառաջագոյն էր ի նոյն ընտրեալ բացատրութիւններով* (ՄՏՌ. 108), *կարծես թէ նախընթացին ալ օրինաւորութեան ձեւ մը տալ կը փորձէ։ Մինչեւ իսկ զայն իբր նախախնամական բան մը կը ցուցնէ, յիշելով թէ Դաւիթ ալ է Բեթղեհեմ թագաւոր օծեալ, սոյնպէս Աստուած է թագաւորութեան թագերն տալով եօթն ընծ. և վրայ կը բերէ թէ՝ նոյնպէս և Աստուած զԷնոք է սոյն յարդարեալ տնօրէնեաց այժմ։ Նամակը այնչափ խոնարհական և գեղնաքարշ ոճով և զգացմամբ գրուած է, որ մինչեւ իսկ գրողները կը գիջանին խոստովանիլ, որ թէպէտ մեծաւ ինչ է ժամանակէ ու տեղ յայտնեալ երեւեցան, բայց անտանելին և մեծ ու տեղ փոխէմք, մեծաւ յերկինս և առաջի քո* (ՄՏՌ. 109)։ *Այդ ոճը, ոչ թէ եկեղեցւոյ մէջէն հակառակութեան և գայթակղութեան կէտ մը բառնալու նպատակը, այլ աւելի Եղիազարի նիւթական կարողութենէն և շինարարութենէն օգտուելու դիտումը կը ցուցնէ, առաջարկելով որ զԵրուսաղէմ նորոգեսցես և հաստատեսցես զԱթոռս* (ՄՏՌ. 110), *և յանձնառու ըլլալով որ եկեալ պէտէս զսուրբ ծառայութեան քո է վերայ մեր գլխոյ* (ՄՏՌ. 109)։ *Նամակին ներքեւ յատուկ անունով անձեր յիշուած չեն, այլ իբրեւ ստորագրութիւն գրուած է, եպիսկոպոսունք, վարդապետք, քահանայք, սարկաւագունք, դպիրք, իշխանք և ամենայն ժողովուրդք, կանանք և անդրադարձ, և այլք* (ՄՏՌ. 111)։

**1809.** *Նամակը Երուսաղէմ տանելու համար պատգամաւորութիւն մը կազմուեցաւ, որուն գլուխը կը*

**ՆԱՄԱԿԻՆ ՀԱՂՈՐԴՈՒԻԼԸ**

*յիշուի Պետրոս Գողթան եպիսկոպոսը, իսկ միաբանութեան գլուխը կը գտնուէր Ստեփանոս Իլվովցին կամ Լեհացին* (§ 1797)։ *Ընդունուած պատմութեան համեմատ էջմիածինի պատուիրակութիւնը Եղիազարի ներկայացաւ Երուսաղէմի մէջ, սակայն Աւետիք Եւդոկիացին այնպէս կը ցուցնէ թէ Պետրոս Ագուլեցին հանդերձ երեք եպիսկոպոսօք, Եղիազարի ներկայացան Զմիւռնիոյ մէջ, ուր կը գտնուէր նա, և և նաւ ալ վարձած էր Հռոմ երթալու համար՝ եօթը վարդապետներու հետ, որք էին, Մինաս, Սուքիաս, Նահապետ, Խաչատուր Զորթան, Սիմոն Քուրդ, Յովհաննէս և ուրիշ մը* (74 ԱՐՐ.75)։ *Սակայն կ'ենթադրենք թէ Աւետիք գրած ատենը շատոնց Արեւելքէ հեռացած և խիստ բանտարկութենէ նեղուած՝ կրցած է պարագաները և տարիներ շփոթել, որովհետև իրեն պատմած պարագաները արդարացնելու համար պէտք էր ընտրութիւնը լրացած ըլլար Յակոբի մահուան և յարաբերութեանց ծրագիրին ատեն, ինչ որ հակառակ է էջմիածինի միաբանութեան նամակին։ Եղիազար որչափ և այդ վերջաւորութեան նկատմամբ գոհ և ուրախ, բայց կ'երեւի թէ շատ շտապ ցուցնել չուզեց, վասնզի մինչեւ որ պատուիրակութիւնը Երուսաղէմ երթար, և Եղիազար պատրաստուէր և ուղեւորէր, և Կոստանդնուպոլիս գար, եօթը ամիսներ անցան մինչեւ* 1682 *Մեծպահոց սկիզբը, որուն բարեկենդանը փետրուար* 26*'ին կ'իյնար։ Մեծպահքը և Յինունքը Կոստանդնուպոլսոյ մէջ անցուց, Օսմանեան կառավարութենէ ալ իր կաթողիկոսութեան հաւանութիւն և հաստատութիւն ստացաւ, և ուրիշ կարեւոր գործերն ալ կարգադրեց։ Այս կարգին չմոռցաւ Կրպոյ Յարութիւն պատրիարքն ալ վարձատրել, իրեն ցուցած պաշտպանութեան համար, և գայն եպիսկոպոսութեան բարձրացուց, և նախկին Տէր Կրպոն* (§ 1781) *եղաւ Կրպոյ Սրբազան։ Վերջապէս Հոգեգալուստէն ետքը, որ յունիս 4'ին կը հանդիպէր, Եղիազար Կ-Պոլսէ կը մեկնի նաւով, և* 1682 *օգոստոս* 22*'ին, Աստուածածնայ շաբթուն վրայ եկող երեքշաբթին կը հասնի էջմիածին, ինչպէս սովորաբար կը գրուի, թէպէտ օգոստոս* 14 *բառ ալ կայ* (ՁԱՔ. Բ. 106), *որ Աստուածածնայ մեռելոցին կ'իյնայ։ Եղիազարի իբրև արդէն օծուած կաթողիկոսի վրայ, նորէն օծման արարողութիւն չկատարուիր, և հարկաւ կը բաւականանան առաջին մուտքին հանդէսով, որովհետեւ ուրիշ որեւէ արարողութեան յիշատակութիւն չունինք։*

**1810.** *Եղիազար անծանօթ անձ մը չէ պատմութեանս համար, որ անոր նախընթացը պարտաւոր ըլլանք*

**ԸՆԹԱՑՔՆ ՈՒ ԳՈՐԾԵՐԸ**

*բացատրել։ Անիկայ* 1641*ին վարդապետութեան աստիճան առնելէն իվեր՝ հրապարակային գործունէութեան մէջ էր որով* 1682*'ին* 41 *տարիներու գործնական կեանք ունէր, և* 70*'ի մօտ ալ տարիք ունեցած պիտի ըլլայ։ Ամէն տեսակ արկածներ անցուցած էր, և ամէն տեսակ պաշտօններու մէջ մտած ու ելած էր քանի մը անգամներ։ Կոստանդնուպոլսոյ և Երուսաղէմի պատրիարքութիւններն ալ անոր ձրգտումներուն յագուրդ չէին տուած. ինքնահնար և նորօրինակ կաթողիկոսութիւն մըն ալ ստեղծած էր, և հակառակ շատերու հակակրութեան և դիմադրութեան՝ իրեն համար կուսակիցներ շահած էր, և ստեղծած դիրքը կը պահէր։ Որչափ ալ այդ անյագուրդ ձգտումները Եղիազարը մինչև այօրէն և անվաւեր ձեռնարկներու մղեցին, սակայն սիրտին խորը հանրութեան օգտակար ըլլալու բարի դիտումը չպակսեցաւ, և ունեցած կարողութեան ձիրքերը և հարստութեան ինչքերը, անձնական վայելքի չյատկացուց, այլ ազգօգուտ շինութիւններու և ձեռնարկներու գործածեց։ Սիմէոն Երեւանեցին ալ զայն կը նկարագրէ իբրեւ* այր ճարտարաբան և ճառամախօս, յաջողակ և առատ (ՁԱՄ.25), *և զովանի ձեռնարկներ կը վերագրէ անոր։ Մարթ է ըսել թէ իրաւ չափազանց եռանդը և անկայար ձգտումը՝ մինչեւ յախուռն ձեռնարկներու մղեցին Եղիազարը, բայց սիրտը չապականեցին, և երբոր բարեդէպ պարագաներով իր իղձերուն յագուրդը գտաւ, էջմիածինի*

մէջ Ամենայն Հայոց հայրապետութեան օրինաւոր յաջորդ ճանչցուելով, և իր բորբոքած [illegible] (ԹՈՐ. Բ. 407), հանդարտ գործունէութեան առաւ ինքզինքը՝ տարիքն ալ այդ ձևը պահանջելով, և շինարար և արդիւնաւոր պաշտօնավարութիւն ունեցաւ յօգուտ Մայրաթոռոյն։ Այդ կարգին իբր գլխաւոր պէտք է նկատել, որ [illegible], ինչ որ մեծ ծառայութիւն մըն էր, քանի որ գիտենք թէ ինչ ծանր նեղութեանց ներքեւ կ'իյնար Մայրաթոռը պարտքերու և պարտատէրերու երեսէն։ Մայրատաճարին վրայ իր յիշատակներն են, Իջման տեղւոյն վրայ շինուած սեղանն ու կաթողիկէն՝ որ յառաջագոյն լոկ գետնէն բարձր կլորակ քար մըն էր (ՇԱՀ. Ա. 31), տաճարին հիւսիսային և հարաւային կամարներուն ներքեւ երկու սեղանները, հիւսիսայինը Ս. Ստեփանոսի անունով և եօթն աստիճանով եպիսկոպոսական ձեռնադրութեանց համար, և հարաւայինը Ս. Կարապետի անունով և երեք աստիճանով վարդապետական ձեռնադրութեանց համար, (ՇԱՀ. Ա. 39), և տաճարին մէջ սրբատաշ քարով բաժնուած դասը, զայն ժողովուրդէն զատելու համար, և վերջապէս տաճարին վրայ աւելցուած երեք փոքր կաթողիկէները (ՉԱՄ. 26)։ Հիմնական նորոգութիւններ կատարեց Ս. Հռիփսիմէի և Ս. Գայիանէի վկայարաններուն և վանքերուն վրայ. ասոնցմէ զատ [illegible] (ՉԱՄ. 25), և [illegible]։ Կալուածներուն ապահովութեան ալ նայեցաւ՝ [illegible]։ Միշտ ալ [illegible] (ՉԱՄ. 26), այսինքն է երբեք ատրնութեանց չզիջանելով, և ոչ ալ բռնութեանց տեղի տալով, մնացած է միշտ նոյն Եղիազարը զոր տեսանք՝ աննկուն գործող և դժուարութեանց և հակառակութեանց դէմ շարունակ մաքառող, ինչպէս իր առաջին քառասնամեայ աշխուժեալ գործունէութեան մէջ։ Վերոյիշեալ շինութիւնները գրաւեցին Եղիազարի հայրապետութեան բովանդակ տեւողութիւնը, և անոնցմէ դուրս շատ քիչ յիշատակներ հասած են ազգային խնդիրներու կամ առանձնական տեղափոխութիւններու վրայ։ Միաբանութեան մէջ ալ հանդարտութեան միջոց մը եղած է Եղիազարի տասնամեայ կաթողիկոսութիւնը, յայտնի նշանակ անոր ունեցած ազդեցիկ իշխանութեան և կարող վարչականութեան։

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐԸ

**1811**. Այս պատճառով կը պարտաւորուինք առանձինն առանձին մտադրութիւն դարձնել ազգային եկեղեցւոյն զանազան աթոռներուն վրայ, որոց մէջ բաժնուած էր ժամանակին Հայութիւնը։ Երբոր Եղիազարի հեռանալով տրամադրելի կը դառնար Երուսաղէմի աթոռը, անոր բնական յաջորդ կը ներկայանար Մարտիրոս Կաֆացին, որ թէպէտ հինէն Եղիազարի մրցակից և հակառակորդ, այլ յարաբերութիւնները փոխուած էին, յորմէհետէ Յակոբի մեծ խորհուրդը մէջտեղ ելած էր, և Կաֆացին անձամբ Երուսաղէմ գացած էր՝ Եղիազարը Կ-Պոլիս հրաւիրելու, որով նորէն բարեկամութիւն հաստատուած էր իրենց մէջ (§ 1791)։ Ըստ այսմ բնաւ դժուարութեան չհանդիպիր ըսել, թէ Եղիազար ինքն ալ երբ Կ-Պոլիս կը գտնուէր, անձամբ օգնած ըլլայ Մարտիրոսի վերջնականապէս Երուսաղէմի պատրիարք ճանչցուելուն, և անբացատրելի կը դառնայ ըսել, թէ [illegible], Մարտիրոս Կ-Պոլիս եկած ըլլայ։ Մարտիրոս անձնապէս պարտքերու տակ կը գտնուէր, ուստի [illegible] կրեց այս երեսէն, և բանտ ալ դրուեցաւ (ՉԱՄ. Գ. 720), ինչ որ կը համաձայնի Ստեփանոս Մեղրեցիի բանտարկութեան մասին գրածներնուս (§ 1785)։ Անհաւատալի չէ կարծել որ Եղիազար Մարտիրոսի ազատութեան ալ օգնած ըլլայ, վասնզի Մարտիրոսի Երուսաղէմ դառնալը կը համեմատուի Եղիազարի էջմիածին ուղեւորելուն 1682'ին։ Շատ չանցնիր և Հայերու ու Յոյներու մէջ վէճ մը կը բացուի 1683'ի զատկին, որ ապրիլ 8'ին կը հանդիպէր, հանդիսատիր Գրիգոր եպիսկոպոսին Ս. Գերեզմանին դուռը աւետարան կարդալէն, զոր Յոյներ [illegible] կ'արգելլեն, իրենց սե-

փական սպառնալով այդ իրաւունքը (ԱՍՏ. Ա. 402)։ Մարտիրոս տեղական դատարանին առջեւ իրաւունք կը շահի. բայց երբ երկու պատրիարքներ Ադրիանուպոլիս կու գան, մեծ եպարքոսը Յոյներուն իրաւունք կու տայ, և հազիւ թէ Քէօմիւրճեանի միջնորդութեամբ գործը հաշտարար կերպով կը փակուի, և Մարտիրոս Երուսաղէմ կ'ուղեւորի։ Բայց ճամբան կը մեռնի Եգիպտոսի մէջ, Վերափոխման շաբաթապահքին, որուն բարեկենդանը կ'իյնար 1683 օգոստոս 5'ին, և կը թաղուի Մար-Մինա կամ Ս. Մինաս եկեղեցւոյ գերեզմաննոցը (ԱՍՏ. Ա. 404)։ Նոր պատրիարքի ընտրութիւնը դժուարութեանց կը հանդիպի, զի հազիւ յետ անցանելոյ երկուց ամաց Յովհաննէս եպիսկոպոս Կոստանդնուպոլսեցի, Նոխուդճի մականուանեալ իբրեւ սիսեռնակեր պանեցող մը, կայսերական հրովարտակով աթոռ կը բազմի 1685'ին։ Խաղաղութիւնը երկարատեւ չըլլար, զի 1687'ին Սիմէոն եպիսկոպոս կը յաջողի պատրիարքութեան հրովարտակ ստանալ, և Յովհաննէսը կը հալածէ (ԱՍՏ. Ա. 405)։ Իսկ ուրիշներ Մինաս Ամդեցին կը կարծեն աթոռը գրաւողը, Յովհաննէսն ալ իրեն հետ աթոռակից պահելով (ԲԱՌ. 56)։ Այլ հաւանական է կարծել, որ նախ Մինաս աթոռին կ'անցնի և Սիմէոնէ կը փոխուի։ Յովհաննէս ալ հանդարտ չմնար և նորէն պատրիարքութիւնը ձեռք ձգելու կ'աշխատի, բայց հազիւ չորս տարիէն կը յաջողի Սիմէոնը տապալել, և ինքն ըլլալ բուն պատրիարքը 1691'ին։ Այդ միջոցին տեղի կ'ունենային Յոյներու և Լատիններու վէճերը Սուրբ Տեղեաց քանի մը հատին սեփականութեան վրայ, և Լատինները դեսպանին միջամտութեամբ զօրանալնէն ետքն ալ Հայոց դէմ, պահանջումներ հաներ էին։ Բայց Յովհաննէս պատրիարք աթոռին ունեցած հին հրովարտակներուն զօրութեամբ՝ յաջողեցաւ հաստատել և պահպանել հայկական սեփականութիւնները։ Սակայն Յոյներ ետ չկասեցան իրենց պահանջումներէն, և չարունակ կը նեղէին Հայերը, մինչեւ իսկ զատկի ճրագալոյցին Ս. Գերեզման մտնելու իրաւունքն ալ գլանալով. բայց Յովհաննէս այդ կէտին մէջ ալ պաշտպանեց Հայոց իրաւունքը 1692'ին (ԱՍՏ. Ա. 412)։ Այդ վիճակին մէջ էին Երուսաղէմի գործերը, Եղիազարի կաթողիկոսութեան վերջերը։ Միայն թէ այդ եղելութիւնները պատճառ եղած էին մեծամեծ ծախքերու և ծանր պարտքերու՝ որոնք 200 քսակի կամ 100,000 ղուրուշի հասած էին. և Պապս Մինաս, որ 40 տարիէ իվեր Երուսաղէմի մատակարարութիւնը կը վարէր, Կ-Պոլիս ղրկուեցաւ, ազգային օգնութիւնը խնդրելու (ԱՍՏ. Ա. 409)։ Այս է այն մեծ պարտքին սկզբնաւորութիւնը, որ Շղթայակիր Գրիգոր պատրիարքին հռչակաւոր գործունէութեան ասպարէզ բացաւ։

**Կ-ՊՈԼՍՈՅ ԳՈՐԾԵՐԸ**

**1812.** Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ կը գտնուէր 1680 դեկտեմբերէն իվեր Կարապետ Կեսարացին կամ Կրպոյ Սրբազանը, երբոր Եղիազար մայրաքաղաքէն Էջմիածին ուղեւորեցաւ (§ 1809)։ Բաւական ալ ազդեցիկ դիրք ստացած էր այդ նախկին անուս երէցը իւր երրորդ պատրիարքութեան մէջ, որ երեք տարիի մօտ տեւեց։ Բայց այս անգամ ալ իրեն մրցակից հանդիսացաւ Եփրեմ եպիսկոպոս Ղափանցի, Սիւնեաց Հաբանդ գաւառէն կամ թէ Կապան քաղաքէն (ՍԻՆ. 255), զոր Եղիազար իւր հասնելէն քիչ ետքը 1683'ին, նուիրակ յղած էր Կ-Պոլսոյ շրջանակին համար։ Տարի մըն էր որ Եփրեմ մայրաքաղաք կը գտնուէր, և հետզհետէ բարեկամներ և կուսակիցներ կը շատցընէր, և իրմէ առաջ նուիրակներուն նման պատրիարքական աթոռը գրաւելու միտքը կը մշակէր։ Վերջապէս իւր նպատակին կը հասնէր, և կայսերական հրովարտակը ստանալով 1684 օգոստոս 15'ին (ՉԱՄ. Գ. 721), Աստուածածնայ պահոց ութբաթ օրը պատրիարքական աթոռը կը գրաւէր։ Եփրեմ, ինչպէս յառաջիկային ալ պիտի տեսնենք, բնութեամբ խիստ և ուղղութեամբ անաչառ հայադաւան, պաշտպան եղաւ այն կուսակցութեան, որ կը ջանար Լատիններու կամ կաթոլիկներու մերձաւորութեամբ պաշտպանութիւն փնտռելու կարծիքը փարատել։ Կարապետ ալ իւր կողմէն անգործ չէր մընար, Եփրեմի դէմ գրգռութիւնները կը մշակէր, և 20 ամիս ետքը 1686 ապրիլին չորրորդ անգամ ըլլալով պատրիարքութիւ-

նը ձեռք կ'անցընէր։ Այս անգամ նուաղ բախտաւոր, տարին մը 1687 ապրիլին, տեղի կու տար իրմէ բռնագունին։ Կարապետի սկիզբէն լոկ քահանայ եղած ըլլալը նորէն քահանայական դասակարգին քաջալերութիւն տուաւ՝ պատրիարքական գահուն հետամուտ ըլլալու։ Կարապետի նոր մրցակիցն ու յաջորդը Թորոս Կոստանդնուպոլսեցի երէցն եղաւ, որ անգամ մըն ալ Կարապետի դէմ ելած, և միայն 40 օր կրցած էր աթոռը պահել (§ 1791)։ Այս անգամ մօտ տարի մը կը վայելէ, և 1688 մարտին տեղի կու տայ ուրիշ երէցի մը, Խաչատուր Ճլեցիին, Սիւնեաց Սոթք կամ Զոք գաւառի Ճիլ գիւղէն։ Բայց նա ալ 7 ամիսէն, 1688 հոկտեմբերին կը տապալուէր Կարապետ Կեսարացիէն, որ հինգերորդ անգամ ըլլալով պատրիարքական աթոռը կը գրաւէր։ Սակայն Կարապետ ալ տակաւ իր ազդեցութիւնը կորուսած էր ժողովուրդին առջեւ, որ չուտով՝ ամիսէ մը (ՉԱՄ. Գ. 721) կամ լաւ եւս հինգ ամիսէ (09 ՕՐԱ. 112), 1689'ին առաջին ամիսներուն մէջ կը հեռացուէր ազգային մեծամեծներու կամքով, որոնք պատրիարքներու մրցակցութենէ զզուած, նոր ընտրութիւնը կը խափանէին, և իրենց ձեռքը կ'անցընէին պատրիարքարանի գործերը տեղակալութեան անունով, որուն մէկ առաջին օրինակը տեսանք 40 տարի առաջ (§ 1699)։ Այս անգամ տեղակալութեան գլուխ գտնուողներէն էին Սախաօղլու կոչուած դերձակ մը, և Շահին անուն որմնադիր մը որ է համամճի, հարկաւ ազդեցիկ արհեստապետներ և պետական գործապետներ, որոնք իրենց մօտ միշտ եկեղեցական փոխանորդ մը պահեցին։ Առաջ Թորոս Կոստանդնուպոլսեցի երէցը, որ պատրիարք էր եղած՝ այդ փոխանորդութեան կոչուեցաւ, բայց շուտով մերժուեցաւ պաշտօնէն, թէպէտ վէ-քէւ երէցօք գործելու սովորութիւնը պահուեցաւ (09 ՕՐԱ. 112), որչափ ալ չենք գտներ փոխանորդութեան կոչուածներուն անունները, և ոչ ալ կրնանք պնդել թէ Երեմիայէ յիշուած՝ Խաչատուր և Տէրտատուր, Մեծատուր և Առաքատուր երէցանք (ՄԽԻ. 29), փոխանորդներուն խոկական անուններն ըլլան, գի նմանահնչիւն անուններ կ'երեւան։

**1813.** Պատրիարքական աթոռին այդ անկեալ վիճակը տեսնելով իրաւացի է Մարտիրոս Բէօմիւրճեան երէցին հետ արքայական մայրաքաղաքէ դատրէնք բանալ, պատրիարքութեան անուանեալն, այսինքն դատրէկ անուն կրողները, որոնք

ԿԱԹՈԼԻԿՆԵՐՈՒ ԳՈՐԾԵՐԸ

յաճախեալ է ղրէս և Բողբոջ գէտոսն ղոս է միոյն Աստուածոյ, տասն կաշառօք և տոկոսեօք ելեալ յերերոց զպաշտօնն։ Ասոր ալ հետեւանքն եղած էր ըստ օրէ յաճախեալ դաւճանական հորն, որ կը ցուցնէ թէ պաշտօնը խելումիջոցը պետական տուրքի յաւելման խոստումն էր եղած։ Այս պատճառով պատրիարքութեան անցնողներ սկսած էին եկեղեցիները կողոպտել ի տանց և ի յեշտակաց, ի դրդոց և այլ գեղերոց, միանգամայն մեծագումար պարտք'ը ալ բարդուած էին պատրիարքարանին վրայ, ուստի առանց պատրիարքի մնալը դարման նկատուած եղաւ պարտքը չշատցնելու համար, և ազգայիններ որոշած էին, որ ոչ դատրէկ լիցի, և ոչ է թողու անփոյթ մոցէ (ԹՈՐ. Բ. 398)։ Անկանոն կացութեան մէջ անկարգութեանց աճումը բնական հետեւանք էր, և նորեր սկսան աւելնալ հեղհեղել։ Ցիշած ենք մայրաքաղաքին Հայութեան մէջ լատինասէր և լատինամոլ կուսակցութեան մը գոյութիւնը, որոնք չէին քաշուեր մինչեւ իսկ Լատինաց դաւանութեան ալ համակերպիլ, ինչպէս որ պատմեցինք (§ 1626), և այս ուղղութեամբ գործող պատրիարքներն ալ յիշեցինք, ինչպէս եղան Յովհաննէս Խուլը (§ 1597), Զաքարիա Վանեցին, և Թովմաս Բերիացին։ Սակայն այն ատեն բռնուած ուղղութիւնը, ներքին կուսակցութեանց պայմաններէն անդին չէր անցած, կը փափաքէին կացութեան տիրանալ, պատրիարքութիւնը ձեռք անցընել, և իրենց ուղղութիւնը քալեցնել. սակայն իրարմէ անջատման և իրարու դէմ կրօնական խրտութեան շարժումներ չկային։ Միեւնոյն եկեղեցիով և միեւնոյն եկեղեցականներով կը վարուէին երկու կողմերը, բերանով կամ նամակով Լատիններու համամտութիւն կը յայտնէին, բայց իրենց ծէսերուն և բարեպաշտութիւններուն մէջ տարբերութիւն չէին մացներ։ Լսրծուն էր այս՛ բռնած ըն-

թացքնին, բայց տակաւին հաստատուն կը մնային կեցած տեղերնին՝ անոնք որ Արեւելք կը մնային, իսկ Արեւմուտք անցնողներ տեղական համակերպութենէ չէին քաշուեր, իսկ Արեւելք դարձած ատեննին նորէն իրենց հնաւանդ ձեւերը կը գործածէին։ Բայց անգամ մը որ այդ սահուն ուղղութիւնը կը սկսէր, գլորումը հետեւանք էր, և այս բանի գլխաւոր պատճառ պէտք է նկատել Արեւմուտքի մէջ կրթուող և դիրք կազմող, և լատինական վանքերու և դպրանոցներու, և յատկապէս Ուրբանեան վարժարանի մէջ ուսում առնող Հայերը, որոնք հիմնապէս տոգորեալ կաթոլիկական սկզբունքներով և սովորութիւններով, և Արեւելեան եկեղեցիներուն տրուած հերձուածողի և հերետիկոսի կոչումներով ականջնին լեցած, միտքերը պղտորող զրոյցներով միամիտները կ՚որսային։ Արեւմուտքի աշակերտող Հայերուն հետ և անոնցմէ առաջ պէտք է յիշել հայերէնագէտ լատին կրօնաւորներ, և առհասարակ իբրեւ քարոզիչ Հռոմի կողմէ Արեւելք ղրկուած զանազան լատին միաբանութեանց անդամակիցներ, որոնք յատկապէս Հայերուն մէջ աշխատելու պաշտօն ունէին։

**1814.** Եղելութեանց ներքին պայմանները լաւ իմանալու համար, անգամ մըն ալ կրկնենք Հայերուն բնական եղած ներքին միտումները ու դիտումները։ Ասոնց առաջինն է իրենց եկեղեցւոյն թոյլատու և լայնախոհ սկզբունքը, որով ուղիղ հաւատքը կամ ուղղափառութիւնը իրենց բացառիկ սեփականութիւն չեն նկատեր, և երեք ժողովները ընդունող եկեղեցիներուն բոլորը՝ Քրիստոսի ճշմարիտ և ընդհանրական եկեղեցիէն դուրս չեն նետեր։ Որչափ ալ իրենց սեփական վարդապետութեան յարած կը մնան, սակայն ուրիշներուն ալ՝ սեփական կամ մասնաւոր կամ երկրորդական վարդապետութիւն ունենալը չեն արգելեր։ Միւս մէկ տեսութիւնն ալ կրթութեան և ուսման և զարգացման անյագ և անկեղծ տենչն է, որով ուր որ նշոյլ մը կը տեսնեն՝ արշաւասոյր կ՚ընթանան, և ուսկից որ ակնկալութիւն կրնան տեսնել՝ անհամբեր կը դիմեն։ Ինչպէս չեն կասեր նիւթական շրջանակի մէջ զոհողութիւններու և նեղութիւններու յանձնառու ըլլալ, նոյնպէս մտաւորական և հոգեւորական շրջանակի մէջ ալ իրենց միտքն ու սիրտը զոհողութեանց ենթարկել չեն քաշուիր։ Այդ սկզբունքներուն հետեւողներուն կողմէն՝ ուրիշ եկեղեցիներու մատուցուած յարգանքը, կամ անոնց համակերպելու յանձնառութիւնը, ոչ հայադաւանութենէ հռոմէադաւանութեան անցնիլ է, և ոչ ալ, ինչպէս կաթոլիկներ կը խօսին, մոլորութենէ ուղղութիւն դառնալ է, այլ փափաքուած նպատակի մը համար անտարբերութեամբ կատարուած զիջողութիւն մըն է։ Հայութեան սեփական այդ զգացումին հետեւանք պէտք է ճանչնանք, հռոմէադաւան դըպրոցներու մէջ ուսում առնող աշակերտներուն համարձակօրէն հայադաւան եկեղեցւոյ պաշտօնէութեան մտնելը, և հայադաւան աթոռներէ ձեռնադրութիւն ընդունիլը, և զայդ պէտք է ճանչնան կաթոլիկութեան պաշտպաններն ալ, եթէ չեն ուզեր իրենց համամիտները, իբր նենգաւոր և իբր կեղծաւորաց ամբաստանել։ Բայց թէ այնպէս կամ թէ այսպէս, ակներեւ է որ մեծ եղաւ այսպիսիներուն ազդեցութիւնը ժողովուրդին մէջ գժտութեան սերմը ցանելու, հաւատակիցները իրարմէ բաժնելու, հերձուածողութեան և հերետիկոսութեան մակդիրներով զիրար նախատելու, սուրբ խորհուրդներուն վաւերականութեան կամ աւօրինութեան զրոյցներով եկեղեցիներ զատելու, ու Հայերը Լատին եկեղեցիներ հաւաքելու, և վերջապէս Եւրոպական կամ օտար յարաբերութեանց գայթակղեցուցիչ և կասկածաւոր ենթադրութիւնները ստեղծելու, և պետական օրէնքով ճանչցուած պատրիարքութեան կամ ազգապետութեան դէմ ըմբոստութեան դրդելու։

ՀԱՅՈՑ ԶԳԱՑՈՒՄՆԵՐԸ

**1815.** Այս տեսակ երկպառակութեանց սկզբնաւորութիւնը ճիշդ այդ միջոցին սկսած ըլլալուն վկայութիւնը ունինք Երեմիա Քէօմիւրճեանէ, որ 1690'ին Եղիազար կաթողիկոսի գրած նամակովը կը ծանուցանէ, թէ եկեալ Հասեալ է Հեռ և Նախանձ և վրդովեալ Նոր

ՆԵՐՔԻՆ ՊԱՌԱԿՏՈՒՄԸ

ի մէջ Հայոց, յորժ և գայթակղութեան բազմաց, կաթոլիկ և հերձուածող, Ֆրէնկ և Հայ շնչեալ, հանդերձ այլովք աղճատանօք։ (ՉԱՄ. Գ. 722)։ *Մաղաքիա Ճէվահիրճեան ալ կը հաւաստէ, թէ մեք ղայտղեալ ինչ ոչ գիտեաք, զի ընկեցեալ Գրիգորի մի ճանաչեաք, և ահա այժմ խաղաղութեամբ բերդ արանց հաւատացեալ ի մէջ եկեղեցւոյ բաժանեալ եմք* (ՉԱՄ. Գ. 723)։ *Չոր Ճէվահիրճեան բերդ արանց կը վերագրէ, Քէօմիւրճեան գլխաւորին անունովը, կը յիշէ թէ այդ բանին եղեւ առիթ Սարգիս ոմն Թոխաթցի* (ՉԱՄ. Գ. 722)։ *Բայց որոշակի չտար այդ Սարգիս Եւդոկիացիին նախընթացը, սակայն պատմութեան կարգէն յայտնապէս կը քաղուի, թէ մոլի լատինասէրներէն էր, և թէպէտ Հայ եկեղեցւոյ մէջ եպիսկոպոսութեան բարձրացած* (ՉԱՄ. Գ. 759), *սակայն անշուշտ հռոմէականներու մէջ ուսած մէկ մը պէտք է ըլլայ։ Ֆրէնկ կոչումին ծագումը, որ աւելի սովորաբար Ֆռանկ կամ Փռանկ կը հնչուէր, թէպէտ ուղղակի Գաղղիոյ բնակիչներուն յատուկ, սակայն Խաչակիրներու ժամանակէն ընդհանրացած էր բոլոր Լատիններուն կամ լաւ եւս Եւրոպացիներուն վրայ։ Այդ կոչումին՝ իբրեւ Հոյ անունին դիմաքաժանեալ, և իբր Ուղ-Հոյ իմաստով գործածուիլը, աւելի քաղաքական քան թէ կրօնական նշանակութիւն տուած է նոյն կոչումին, և այդ պատճառով քաղաքականապէս կասկածելի կոչում նկատուած է, իբրեւ բարեկամ և մտերիմ, համամիտ և գործակից Եւրոպական ազգութեանց, որոնք Օսմանեան պետութեանը դէմ հակառակութիւններ և թշնամութիւններ և պատերազմներ կը մղէին շարունակ։ Իսկ այդ Ֆրէնկ անունը ժամանակին լատինասէրներն ու լատինամոլները սիրով կ'առնէին վրանին, իբրեւ նշանակ իրենց եւրոպական գաղափարներու հետեւողութեան։ Կաթոլիկ կոչումն ալ կը պահէին իբրեւ տառական կոչումն հռոմէական եկեղեցւոյ իրեն սեփականած անունին, որ ճշդիւ կը յայտնէր ծայրայեղ լատինամոլներու վիճակը։ Միայն թէ իրաւունք չունէին Կաթոլիկ անունը Ուղղափառ թարգմանել, որ ոչ ստուգաբանութեամբ, ոչ կիրառութեամբ, և ոչ պաշտօնական լեզուով Կաթոլիկ կոչման չհամապատասխաներ։ Ստուգաբանութեամբ Յոյներուն օրթոտօքս կոչումին կը համեմատի, իսկ պաշտօնական կիրառութեամբ սկիզբէն իվեր սեփական է Հայ ազգային, կամ Հայադաւան կամ Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ, և անոնք որ հայադաւանութենէ կը խորշէին՝ իրաւունք չունէին և չունին իրենց վրայ առնուլ ուղղափառ կոչումը։ Անուանէն գործին անցնելով՝ ազգին մէջ սպրդել սկսած խարութիւնն ու պառակտումը յառաջ կու գար այն թելադրութիւնէն, զոր Լատիններ և լատինամիտներ իրենց հետեւողներուն կ'ընէին, թէ Հայ եկեղեցւոյ մէջ պաշտուած խորհուրդները ապօրէն են, և կատարուած բարեպաշտութիւնները ապարդիւն. ուստի կը յորդորէին լատին եկեղեցիներու մէջ կատարել իրենց հոգեւորականութիւնները։ Բայց որովհետեւ չէին կրնար այդ սկզբունքը պատշաճեցնել մկրտութեան, պսակի և թաղումի վրայ, որոնք արտաքին նշանակութիւն և օրինականութիւն ալ ունէին, կը գոհանային գոնէ խոստովանութեան, հաղորդութեան և պատարագի համար խորշեցնել Հայերը իրենց եկեղեցիներէն, և լատին եկեղեցիներ յաճախելու տոփել։ Իրենց յատուկ Հայ եկեղեցիներ բանալու արտօնութիւնը չունէին, քանի որ պետութենէ ճանչցուած հասարակութիւն կամ ազգութիւն չէին. սակայն այդ նպատակին ձգտումներ ունէին, և պաշտօնական դիրքը չկրնալով ձեռք ձգել, տուներու մէջ գաղտնի մատուռներ կազմակերպելու կը ձեռնարկէին։*

**1816.** *Սսոյ աթոռին վիճակն ալ լաւագոյն չէր, մանաւանդ որ հին աղթարմայութեան խմորը ջնջուած չէր Կիլիկիոյ կողմերէն, և ամէն առտնին յուզմունքներ դիւրաւ այդ կողմը կը մտէին։ Աթոռը պառակտման մէջ թողուցինք վերջին անգամ 1679'ին, զի Սիսի մէջ Սահակ Մէյխանէճին և Բերիոյ մէջ Ազարիա Կարկառեցին նստան երկու նախորդ պառակտեալներու տեղ* (§ 1779)։ *Ընդհանրապէս Բերիա նստողներ աւելի մօտ էին հռոմէականութեան, տեղւոյն մէջ գտնուող Լատին կրօնաւորներու հետ չփուելով, և իրեն բաժանեալ և տկարագոյն*

ՍՍՈՅ ԱԹՈՌԸ

գիրքը Արեւմտեայց նպաստներով և հովանաւորութիւնով զօրացնելու համար։ Ազարիա բոլորովին իսկ Լատիններէն գրաւուելով, 1683'ին անձամբ Հռոմ գնաց ծեր տարիքին մէջ (09 ՕՐԱ. 284), թէպէտեւ ուրիշներ 1683'ին կը դնեն Ազարիայի բնութիւնը և հինգ տարի ալ պաշտօնավարութիւն կու տան (ՁԱՄ. յա. 111)։ Ինչպէս ալ Ազարիա հռոմայեցւոց բանի յանանց (ՍԽՍ. 539) Հռոմ գացած ատենը, մենք աւելի հաւանական կը տեսնենք որ անոր նպատակը եղած է նոր նպաստներով զօրացած վերադառնալ, սակայն իւր յառաջացեալ տարիքը չներեց իրեն այդ նպատակը իրագործել, և Հռոմի մէջ վախճանեցաւ ու թաղուեցաւ 92 տարեկան (ՍԽՍ. 539)։ Ազարիայէն ետքը ընդհատած կ'երեւի Բերիայի հակաթոռ աթոռին յաջորդութիւնը, սակայն անգամ մը սկսած պառակտումը բոլորովին չջնջուեցաւ, և որեւէ ներքին տարաձայնութեան պահուն, խկոյն Բերիոյ հակաթոռութիւնը նորոգուած կը գտնենք։ Իսկ Սահակ Մէյխանէճին մինչեւ 1689 շարունակեց իւր կաթողիկոսութիւնը, և իրեն յաջորդ ունեցաւ Գրիգոր Ատանացին, Պիծակ մականուանեալ, որուն միայն երկու տարի պաշտօնավարութիւն կը տրուի (ՁԱՄ. յա. 111), և հրաժարելով ձեռնթափ եղած կ'րսուի (09 ՕՐԱ. 284) 1691'ին։ Սակայն ոչ միայն ժամանակիս պատրիարքներուն և կաթողիկոսներուն հոգիէն շատ հեռու էր՝ ձեռք անցուցած իշխանութիւննին ձեռքէ հանել, այլեւ անցողական յիշատակ մը, թէ Գրիգոր Կիլիկիոյ կաթողիկոս 1693'ին Հռոմ գացած ըլլայ երկու եպիսկոպոսներու ընկերակցութեամբ (ԿԱԹ. 165), կը հաստատէ թէ Գրիգոր իբր Կիլիկիոյ կաթողիկոս կը շրջէր տակաւին։ Ուստի աւելի պատմութեան կարգին համաձայն կը գտնենք ըսել, թէ Աստուածատուր Սասունցի, Նարին մականուանեալ, Գրիգորի վրայ զօրանալով զայն աթոռէն մերժած և ինքն տեղը գրաւած է, և Գրիգոր աստանդական Հռոմ ալ դիմած է, որպէսզի որեւէ հռոմէական գաւանութեան պատրուակով նիւթական նըպաստ ձեռք ձգէ և անով կարենայ նորէն իւր աթոռը դառնալ։ Սակայն կ'երեւի թէ այս կերպով ալ յաջողութիւն գտած չէ, զի աւելի ուշ, 1703'ին կը գտնենք զայն Երուսաղէմի մէջ (09 ՕՐԱ. 284), և այս կը բաւէ բացատրել Հռոմ երթալուն իսկական նպատակը։ Վասնզի հռոմէականութեան միտումը, որ Կիլիկիոյ և Կոստանդնուպոլսոյ աթոռներուն մէջ կրցաւ դեր մը խաղալ, Երուսաղէմի աթոռին և Երուսաղէմի միաբանութեան վրայ բնաւ չազդեց, և չէր ալ կրնար ազդել, քանի որ շարունակ Լատիններու դէմ ալ մաքառելու պարտաւոր էին՝ Հայկական սեփականութեանց պաշտպանութեան համար (§ 1811)։ Զենք կրնար ճշդել թէ Կ-Պոլսոյ աթոռը ինչչափ մասնակցութիւն ունեցած է Պիծակի և Նարինի մրցումներուն, զի 1691'ին կը շարունակէր աշխարհական տեղակալներուն վարչութիւնը (§ 1812)։

**1817**. Եղիազար կաթողիկոսի կարողութեան համբաւը լաւ տպաւորութիւն ունեցած էր Հայաստանի մէջ, որ էջն յամենայն կողմանց է հնազանդութեան սմա, մինչեւ իսկ Աղթամարի աթոռը յանձն առաւ վերջ տալ ներհակընդդէմ մաքառումներու, և ընդունելով Էջմիածնայ գերիշխանութիւնը՝ զգալի և նշանակալից կերպով՝ նոր շինութիւն է սմանէ (ՋԱՔ. Բ. 106)։ Երբոր Յովհաննէս Թութունճի կաթողիկոսը վախճանեցաւ 1683'ին (§ 1776), իրեն յաջորդ ընտրուած Թովմաս Ցիրինցին՝ փոխանակ իր եպիսկոպոսներէն ընդունելու կաթողիկոսական օծումը, Վեհափառ ընծայեալ, եպիսկոպոսաց, քահանայից և վարդապետաց ուղեւորեցաւ Էջմիածին, և Եղիազարէ ընդունեցաւ իւր ձեռնադրութիւնը Մայրտաճարին մէջ, և մեծաւ պատուով և մեծամեծ պարգևօք փոխարինուեցաւ, միւռոն ալ առաւ Էջմիածինէ իբրեւ նշանակ հպատակութեան, և այնպէս դարձաւ իւր աթոռը Աղթամար, որով վերջացած եղաւ ընդդատութիւն որ է նախնեաց առաջնոց հայրապետաց Աղթամարայ սկսած էր, և բոլոր Հայ եկեղեցին եղաւ մի հօտ և մի հովիւ, ընդ գերագահ իշխանութեամբ կաթողիկոսին Ամենայն Հայոց։ Այդ եղելութիւնը պատմող Խժիշկի մաշտոցին յիշատակագիրը, Թովմային բերանը պատմելով կը յարէ՝ թէ դադարեցոյց չարն Սրկաթնակաց, այսինքն է հռոմէականներու,

ԱՂԹԱՄԱՐ ԵՒ ԷՋՄԻԱԾԻՆ

որով կ՚ուզէ իմանալ Հայաստան թափառող Լատին կամ լատինամիտ աբեղաները (ՕՕ ԲԻՋ. 1138)։ Ասոնք սակայն Հայոց եկեղեցւոյն դէմ կը կրկնէին, և դեռ կը կրկնեն, թէ բազմագլխեան է և յատուկ գլուխ մը չունի, վասնզի մէկէ աւելի կաթողիկոսներ կը ճանչնայ։ Սակայն երբեք Հայոց եկեղեցին իւր Մայրաթոռին գերագոյն իշխանութիւնը այլայլած չէ։ Ամէն եկեղեցիներու նուիրապետութեան մէջ յատուկ աստիճան մըն ալ ընդունուած է ընդհանուր պատրիարքին կամ կաթողիկոսին, և մետրապոլիտ արքեպիսկոպոսին մէջտեղ, որ քաղաքականապէս կամ ազգայնապէս զատուած մասի մը գլուխն է. և որչափ ալ կաթողիկոսի կամ պատրիարքի անուն կը կրէ, սակայն իբր երկրորդական կամ իբր մասնաւոր կ՚իմանայ այդ՝ անունը, մինչև աստիճան մը ինքնագլուխ իրաւասութեամբ, բայց միշտ գերագոյն աթոռին իշխանութիւնը ճանչնալով։ Այդ երկրորդական աստիճանի պատրիարքներուն կամ կաթողիկոսներուն, միւռոն օրհնելու և եպիսկոպոս ձեռնադրելու արտօնութիւն ունենալն ալ՝ այդ յարաբերութիւնը չխանգարեր, զի յիշուած եկեղեցական ծիսակատարութիւնները Հայոց մէջ ալ՝ ընդհանուր հայրապետին վերապահուած չեն եկեղեցական բացարձակ կանոնով, այլ միայն տիրող սովորութեամբ կամ ներքին կարգադրութեամբ։ Կանոնական սկզբունքով ամէն եպիսկոպոս կրնայ միւռոն օրհնել, և ամէն մետրապոլիտ կրնայ եպիսկոպոս ձեռնադրել երկու եպիսկոպոսներու ընկերակցութեամբ։ Ամէն առթի մէջ Աղթամարի աթոռին առած քայլը գեղեցիկ ցուցմունք մըն էր Հայոց եկեղեցւոյն դէմ խօսուած մեղադրանքը հերքելու։ Թովմայի նախաձեռնութեամբ սկսած սովորութիւնը շատ գեղեցիկ կարգադրութիւն մը եղած կ՚ըլլար, եթէ շարունակէր Աղթամարի և Կիլիկիոյ աթոռներուն կողմէն, հետևելով նախապէս Վրաց և Աղուանից կաթողիկոսներուն կողմանէ պահուած սովորութեան. բայց դժբախտաբար նորէն խանգարեցաւ նոյնիսկ Թովմայի կողմէ 1693՚ին, Եղիազարի յաջորդին օրով։

**1818**. Լեհաստանի մէջ եղածները պատմեցինք մինչև Նիկոլի մահը 1681՚ին (§ 1784), զոր Վարդան Յունանեանի գրուածէն առնելով՝ ոմն կը դնէ հոկտեմբեր 14՚ին (ԿԱՄ. 127), և ուրիշ մը հոկտեմբեր 24՚ին (ՏԱՃ. 122), որ կը պատասխանէ ամարներու տարբերութեան։ Իսկ Ստեփանոս Ռոշքեան կը դնէ մարտ 21՚ին 85 տարեկան (ԿԱՄ. 143), մինչ 1626՚ին 22 տարեկան ձեռնադրուած ըլլալով (§ 1638), 77 տարեկան պէտք էր ըլլար, 55 տարի եպիսկոպոսութիւն վարած ըլլալով։ Աւելի վաւերական աղբիւրներ չունինք տարիքն ու մահուան օրը ճշդելու։ Իսկ Ռոշքեան ուրիշ տեղ Նիկոլի տարիքը 72 և եպիսկոպոսութիւնը 42 դնելով (ԿԱՄ. 142), ոչ 22 այլ 30 տարեկան ձեռնադրուած կ՚ենթադրէ, և իրաւունք կ՚ունենանք առաջին թուականներուն հետևիլ։ Երբոր Նիկոլ կը մեռնէր, իրեն օգնականն էր Յովհաննէս Կերիմովիչ, որ Քարմատանենց ալ կոչուած է (ԿԱՄ. 143), իսկ Վարդան Յունանեան որ օգնական և յաջորդ նշանակուած էր (§ 1783), Իլվովէ բացակայ էր, կը տանէր չհրաման ի տարբ ժողովոյն այսինքն Փրոբականտայէն, պացած էր ի Հայաստան բողէքըյ ողջոյն, կամ հաւմէջագաւանութիւն տարածելու, որովհետև Նիկոլ գևաևւս տայք էր ի տողջ (ԿԱՄ. 143)։ Յունանեանի քարոզութենէն միայն Սահակ Մակուեցի եպիսկոպոսին իրեն հաւանիլը յիշուած է (ՊԼԾ. 277), զոր քմածին կերպով կաթողիկոսութեան տեղակալ կ՚ընեն ոմանք (ԱՋԱ. 129)։ Սահակ Մակուեցի անուն եպիսկոպոսը յիշեցինք արդէն տեղապահութեան անուանուած՝ երբ Յակոբ Էջմիածինէ հեռացաւ, բայց Եղիկիայէ ետ դարձաւ (§ 1759), որով երկար պաշտօնավարութիւն չունեցաւ։ Իսկ երբ Յակոբ նորէն ուղևորութեան ելաւ Մատթէոս էր տեղապահը, և վերջին մեկնելուն Ստեփանոս, և Սահակի մը կարծեցեալ կաթողիկոսութիւնը անհիմն ցուցուցինք (§ 1798)։ Վարդան Յունանեանին դառնալով որովհետև անոր քարոզութիւնները ժողովուրդին մէջ շփոթութիւն կը ձգէին, 1682՚ին կոչուեցաւ Էջմիածին, և հնազանդեցաւ, ուր Խաչատուր Կարնեցին միայն իրեն յարեցաւ (ԼԷՕ. Ա. 305), և ինքը եղանակը դատ հեռանալու։ Հազիւ թէ

*Նիկոլի մահուան լուրը առաւ, փութաց Իլվով հասնիլ, և ձեռք առնուլ Լեհահայոց արքեպիսկոպոսութեան աթոռը ուր կը գըտնենք 1683'ին* (ԿԱՄ. 197), *բայց չենք կըրնար ճշդել հասնելուն թուականը։ Վարդան Յունանեան գործի ձեռնարկեց ոչ եւս Նիկոլի նման յեղյեղուկ կերպով հռոմէադաւանութեան ծառայելով, այլ ըստ ամենայնի հաստատամիտ ուղղութեամբ զայն ամրացընել աշխատելով, այնպէս որ Լեհահայոց բռնի միութեան եթէ սկզբնաւորողն Նիկոլ էր, զայն լրացնողը Վարդան եղաւ, որ զամենայն բանն բարեբերութեան խրատովք առնելով, զոր անկեալ ըմբռնողքն սիրոյն ունէին, ուստի Հայերն ալ իրեն պատիւ չէին տներ* (ԿԱՄ. 130)։ *Վարդան որդի էր Յունան քահանայի, Թոխաթու Ծառու գիւղէն* (ԿԱՄ. 143), *կամ Խաղտեաց սորոտր Գըուզի գիւղէն* (ԿԱՄ. 198), *որ նոյն անունի տարբեր հնչումներ կ'երեւին, իսկ կեանքը Եւդոկիոյ մէջ անցնելուն, սովորաբար Եւդոկիացի կը կոչուի։ Վարժեալ ընտանեկանն ի Վաղարշապատ, և ընտանեկանն ի Լեհաստան* (ԿԱՄ. 198), *որ է Լեոպոլիս կամ Իլվով, Փիթուի ձեռքին տակ, անոր կողմէ Հռոմ Փրոփականտայի դպրանոցը ղրկուած էր կատարելագործուելու* (§ 1782), *և վերջէն իբրեւ Հռոմի կատարելապէս վստահելի անձ մը՝ Նիկոլի յաջորդ էր նշանակուած* (§ 1783)։ *Այդ պաշտօնին հասնելէն ետքն ալ՝ առեր պարապ չանցընելու համար Իլվովէ Սրեւելք էր անցած հռոմէադաւանութիւն տարածելու եռանդով։ Առանց մանր պարագաներ պատմելու՝ բաւական կը սեպենք ըսել, թէ Վարդան Լեհական իշխանութենէ պաշտպանութիւն գտնելով, և Լատին արքեպիսկոպոսին և կրօնաւորներուն հլու հպատակութիւն ցուցնելով, մէկ կողմէն կ'աշխատէր բոլոր Հայ եկեղեցւոյ դաւանական և ծիսական կէտերը հռոմէականին նմանցնել, և միւս կողմէ հայադաւանութեան պաշտպանները ընկճել, և վիճակին և շրջակայից մէջ գտնուած Հայ եկեղեցականները այս կամ այն կերպով իրեն կողմը ձգել։ Անոնց մէջ կը յիշուին Մինաս վարդապետ Եւդոկիացի՝ Պաղտանի կամ Մոլտաւիոյ եպիսկոպոս, Զիլիֆտարօղլու մականուանեալ,* 1686'ին (ԿԱՄ. 127), *Աստուածատուր վարդապետ Մշեցի՝ Ս. Կարապետի վանքէն, և Քրիստոստուր քահանայ՝ Սեչովի աւագերէց՝ Մանտրող մականուանեալ,* 1689'ին. *Մովսէս եպիսկոպոս Երեւանցի՝ Էջմիածինի նուիրակ* 1690'ին (ԿԱՄ. 44), *Եղիա քահանայ Սեչովցի, Մանդրուն մականուանեալ, Մոլտաւիոյ աւագերէց* 1691'ին (ԿԱՄ. 128), *և Մխիթար եպիսկոպոս Մոկացի, Լալուակ Միոյ կոչուած* 1693'ին (ԿԱՄ. 145)։ *Ասոնցմէ ոմանք Իլվով հանդիպելով, և տեղական եպիսկոպոսը հաճեցնելով նպաստ մը չորթելու, և ուրիշներն ալ Դրանսիլվանիոյ մէջ պաշտպանութիւն գտնելու դիտումով գործած. յայտնի կերպով չենք իմանար թէ այսպիսիներու վկայութեամբ ինչ փաստ կը կազմուի հռոմէական դաւանութեան համար։ Վարդան հեռուէն ալ երբեմն իւր ծանօթներուն միջնորդ կը դառնար, ինչպէս Ազարիա Աղուանից կաթողիկոսին համար ըրաւ, երբ անոր համար փոյթ տարաւ պապին մօտ* 1688'ին (ԿԱՄ. 127), *և Ազարիա փոխարէն շնորհակալութեան գիր մը կը գրէ պապին* 1695'ին, *որ իբր թէ կ'ըլլայ գործական Բանին Ընդհանրութեան և քահանայութեան, և որուն վրայ պապէն չահ Հիւսէյինին յանձնարարական մըն ալ կը գրուի Ազարիայի համար* (ԿԱՄ. 145)։

**1819**. *Յունանեանի գործերուն ամէնէն նշանաւորը եղած է՝* 1689 *հոկտեմբեր* 10'*ին Իլվովի մէջ գումարած Լեհաստանեան ժողովը* (ԿԱՄ. 129), *որ Սինոդոս ալ կոչուած է* (ԿԱՄ. 144),

ԼԵՀԱՀԱՅՈՑ ԱՆՁԱՏՈՒՄԸ

*ուր Լեհաստանի Հայոց եկեղեցիներու մէջ գործածուելիք ծիսական գիրքերը ծայրէ ծայր աչքէ կ'անցըուին, և Հայաստանեայց եկեղեցւոյ սուրբ հայրերուն կարծեցեալ մոլորութիւնները, Վարդան Յունանեանի և նմանօրինակ կարճամիտներու խելքով կ'ուղղուին, և նոր օրինակներ կը կազմուին, և Հռոմ կը ղրկուին ըստ այնմ տպագրուելու և հռոմէադաւան Հայերու կիրառութեան ծառայելու համար։ Այդ գործին կ'աշխատակցին Հայերու քարոզիչ և ուսուցիչ Լատին աբեղաներն ալ, և նոյնիսկ Լեհաստանի արքունեաց մօտ պապական նուիրակ գըտնուող Կանտէլմի* (Gandelmi) *եպիսկոպոսն*

ալ ժողովին կը նախագահէ, և Աստուածատուր Ներսէսեան եպիսկոպոսին կը յանձնուի սրբագրեալ ծիսարանները Հռոմ տանիլ և տպագրութեամբ աշխատիլ։ Այդ գիրքերն են Պատարագատետր, Տօնացոյց և ուրիշ գրքեր (ԿԱՄ. 129), այսինքն Ժամագիրք, Շարական և Մաշտոց։ Հռոմի մէջ Բարսեղ և Յովհաննէս Հոլովներ ալ (§ 1807) իրենց մասնակցութիւնը պէտք էր նուիրէին, բայց հաւանաբար առանց կանխաւ կատարած ուղղութիւնները բաւական սեպուեցան, վասնզի 1689 թուականէն ետքը նոր հրատարակութիւններ չունինք Հռոմի մէջ տպագրուած։ Բայց Վարդանի գումարած ժողովը ուրիշ հետեւանք ունեցաւ աւելի կարեւոր։ Քանի որ Հայոց եկեղեցւոյ վերաբերեալ գործառնութեան մը պապական նուիրակը կը նախագահէր իբրև եկեղեցական իշխանութեան ներկայացուցիչ, այլեւս Հայոց հայրապետին իրաւասութիւնը ոտնակոխ կ'ըլլար։ Այդ պարագային հետ պէտք է կապել Վարդանի այն քայլը, որով վերջնականապէս կտրեց Լեհահայերու կապը Էջմիածնի հետ, մինչ մինչեւ այն ատեն թէ Նիկոլ և թէ ինքն Վարդան՝ ինքզինքնին Էջմիածինի աթոռին հպատակ կը ճանչնային (ԼԵՕ. Ա. 305)։ Բացարձակ չենք կրնար պնդել թէ Հայոց հայրապետին անունին յիշատակութիւնն ալ դադարած ըլլայ, բայց շատ հաւանական կը դատենք, քանի որ զայն իբրեւ մոլորեալ ու հերձուածող ու հերետիկոս բռնելու յանդգնութեան հասած էին։ Այս թուականին, այսինքն 1689 հոկտեմբեր 10'ին պէտք է հաստատել Լեհահայերուն՝ Հայոց Ուղղափառ սուրբ եկեղեցիէն պաշտօնապէս խզուիլը, քանի որ Իւլովի աթոռը ներկայէն Էջմիածնէ կտրուած անկախ և Հռոմայ եկեղեցւոյ հետ միացեալ հրատարակեց։ Հռոմէականք այս որոշման վրայ գրած ատեննին, Վարդան Միաբանութեան հայրը կոչուելու փառքը կ'ունի (ԸՍՏ. 382), բայց լաւագոյն էր ազգային եկեղեցւոյ ծոցէն բաժնուեցաւ ըսէին, ոչ ալ Ուղղափառ եղաւ, այլ ուղղափառութենէ հեռացաւ գրէին, զի Ուղղափառ՝ Հայ եկեղեցւոյ հայերէն անունն է, և Կաթոլիկ բառը Ուղղափառ չկրնար թարգմանուիլ։ Մինչեւ այս ատեն Իւլովի աթոռը, ընդհանուր առաջնորդութիւն էր բոլոր արեւմտեան գաղթականներուն, այլ Յովնանեանի 1689'ին առած քայլը, իրմէ անջատեց Մոլտաւիայի և Վալաքիայի և Պուքովինայի գաղթականները, որոնք ազգային եկեղեցւոյ հաւատարիմ մնացին, և նոյնիսկ ատենանդ գտնուող հռոմէադաւաններն ալ քաղաքական բաժանմամբ իր հպատակութենէ ելան, և մնաց պարզապէս Կալիցիա գաւառը եղող հռոմէադաւան Հայերուն եպիսկոպոսարանը։

**1820.** Յովնանեան ուրիշ գաւառներու Հայերէն ձեռք քաշելու ստիպուած, մտադրութիւն դարձուց Մաճառայ երկրին Դրանսիլվանիա գաւառին մէջ հաստատուող նոր գաղթականներուն վրայ։ Ասոնց սկզբնաւորութիւնը կը հանուի մինչեւ 1654, սակայն բուն գաղթականութիւնը կը դրուի 1672'ին, երբ Մոլտաւիայի յունադաւան իշխանը հալածանք հանեց, և մաս մը Հայեր Մոլտաւիայէ հեռացան։

ՀՈՒՆԳԱՐԱՀԱՅ ԳԱՂՈՒԹԸ

Այս խումբէն էին Մինաս Զիլիֆտարօղլու եպիսկոպոսը և Եղիա Աեչովցի քահանան (ԳԱԼ. Ա. 2), որոնցմէ առաջինը Վարդան յաջողեցաւ իր կողմը շահիլ 1686'ին (§ 1818), և հաւանաբար անոր մահուընէ ետքն է որ 1691 յուլիս 30'ին յատկապէս Դրանսիլվանիոյ համար եպիսկոպոս ձեռնադրեց Օքսենտիոս Վերծերեսքօ (ԿԱՄ. 128) կամ Աւքսենտիոս Վրզարեան (ԳԱԼ. Ա. 19) Պօթուչանցի վարդապետը, փոխադրեցաւ Հռոմի համալսարանն Ուրբանեան, այսինքն է Փրոփականտայի վարժարանին մէջ, որ աշակերտ ընդունելէն՝ միաբանեցոյց ընդ սուրբ եկեղեցւոյն Հռոմայ (ԿԱՄ. 128)։ Արդէն կազմակերպեալ չէին նոր գաղթականները, և Աւստրիոյ կայսերութեան պաշտպանութեան ալ կը կարօտէին, ուստի շատ դիւրաւ կատարուեցաւ Հունգարահայերուն դաւանափոխութիւնը։ Ըստ այսմ կը յայտնուի, թէ Եղիա Աեչովցի քահանային 1691'ին դաւանափոխ ըլլալն ալ (§ 1818) ինչ դրդումէ առաջ եկած է։

**1821.** Պարսկաստանի Հայերուն վրայ խօսած ատեննիս, գլխաւոր կէտ կը նկատենք շահ Սիւլէյմանի մտադրութիւնը, որ բոլորովին հեռանալով իր նախնեաց սկզբ-

բանքէն, կ'աշխատէր «անդրադարձուցանել զշարժումն և զբաժանումն ազգիս երկփեղկեալ, միաւորել զազգս Հայոց, ի հանապազ խռովութեանց, և դարձուցանել զնոյն» խաղաղական կրօնքին (ԽԱՉ. 154)։

ԴԱՒԻԹ ՋՈՒՂԱՅԵՑԻ

Այս պարագան բաւական է հաստատելու թէ այլ եւս Պարսկաստանի գաղթականները չունէին այն հանգիստ վիճակը, զոր կը վայելէին Մեծ Շահաբասի օրերը։ Իրենց հոգեւորական վարչութիւնը կեդրոնացած էր Ամենափրկչի վանքին մէջ, ուր արժանաւոր առաջնորդներ կը գտնուէին ընդհանրապէս։ Խաչատուր Կեսարացիին յաջորդ կը դնենք ումանք Դաւիթ Ջուղայեցին (ԽԱՉ. 141), բայց մենք արդէն յիշեցինք թէ Սիմէոն Ջուղայեցին եղած էր անոր յաջորդը (§ 1711)։ Իսկ Յակոբ Ջուղայեցին դժուար է այդ կարգին անցընել, որովհետեւ 1655'ին Դաւիթ պաշտօնի վրայ կը յիշուի (ԽԱՉ. 142), որ կը համապատասխանէ Սիմէոնի Ջուղայէ հեռանալուն թուականին (§ 1711)։ Խաչատուր արեղայ Ջուղայեցի չափազանց գովեստներ կը շռայլէ Դաւիթի, կոչելով «զայն երէցս երանելի քահանայապետ սուրբ Դաւիթ հրեշտակային վարդապետ» (ԽԱՉ. 141), և Դաւիթի արժանիքներուն գլխաւորն է Ամենափրկչի վանքը վերաշինելը՝ հոյակապ և «մեծամեծ և չքնաղ քարեղէն կերպով, ոսկենկար և երփներանգ սանձարով, չքնաղ գեղեցիկ և ամենագեղ յօրինուածով», զոր լրացուց 1664'ին (ԽԱՉ. 142)։ Դաւիթ նիւթական շինութեանց հետ ներքին զարգացման ալ աշխատեցաւ, և աշակերտներ հասուց «մինչեւ ցայսօր, ամենեքեան որ ընթերցեն և տեսանիցեն, զորս գեղեցկազարդ քանդակագործս հելլենական արուեստիւ և բնաշխարհական ճարտարագործութեամբ» (ԽԱՉ. 219), և եղան «անվանելի արուեստիւ ընտրեալ Պարսից նկարագործաց, և ընտրեալ Եւրոպացւոց հեռաւորաց» (ԽԱՉ. 148)։ Ասոնց մէջ երկու նշանաւորագոյններն են Ստեփանոս Ջուղայեցի, որ Դաւիթին յաջորդեց (ԽԱՉ. 149), և Յովհաննէս Մրքուզ, որ նշանաւոր եղաւ իսլամ օրէնսգէտներուն հետ, և նոյն իսկ Պարսից շահին հետ քրիստոնէական հաւատալեաց պաշտպանութեան համար կատարած վիճաբանութիւններովը (ԽԱՉ. 153), զորս երկարօրէն կը քաղէ Խաչատուր (ԽԱՉ. 154-218)։ Ասոնցմէ ետքը կը յիշուին Աղեքսանդր, Խաչատուր, Մինաս, Անդրէաս, Միքայէլ, Մարկոս, Յովսէփ, Սիմէոն և Յովհան վարդապետներ, ամէնքն ալ եպիսկոպոսութեան բարձրացած Մրքուզէն զատ, որ «խորով կամօք հրաժարեցաւ» (ԽԱՉ. 219)։

**1822.** Երբոր 1680'ին Յակոբ կաթողիկոս Կ-Պոլիս կը գտնուէր, Յոհան արեղայ մը զայն կը բանադատէ, որ Փէրիա գաւառին առաջնորդութիւնը իրեն տուած Հազարջրիպի վանքին հետ, և կաթողիկոսին դժուարանալուն վրայ կը սպառնայ «ստորանալ զՔրիստոսապետն մեր»։

ՅՈՀԱՆ ՇԵԽ-ՄՈՒՄԻՆ

Յակոբ իբր թէ կը զիջանի կոնդակը տալ, բայց միեւնոյն ժամանակ կը գրէ Էջմիածին, որ «երբոր զայ ըմբռնել դիցեն զնա ի Սեւան կղզւոջ, և մի եւս խաղաղ ելցէ անտի» (ԽԱՉ. 149)։ Ըստ այսմ ալ կը գործադրուի, և Յոհան քանի մը տարի կը մնայ Սեւան, բայց վերջապէս կը յաջողի փախչիլ անտի, և գաղտ Փէրիա գալով կը հաստատուի Հազարջրիպ վանքը։ Հագիւ թէ լուրը կ'առնուի Նոր-Ջուղայի մէջ, Ստեփանոս վարդապետ որ Դաւիթի յաջորդած էր, և Աղաբիր Շահխաթունեանց գիւղաւագը, և Ջուղայեցւոց գլխաւորներ, վրայ կը հասնին, «ըմբռնեն զՅոհան շղթայիւք, խոշտանգանօք և տանջանօք ողորմելի տառապեալն, և դնեն ի զնդան բանտի». բայց Յոհան անկէ ալ կը փախչի, և Պարսից դիմելով իսլամութիւն կ'ընդունի (ԽԱՉ. 150) Մէհմէտ-Ալի բէկ, կամ Շեխ-Մումին կոչուելով (ԽԱՉ. 168), և պատեհի կը սպասէ Ստեփանոսէ և խորհրդակիցներէն վրէժը լուծելու։ Այս տեղ պատմիչին ժամանակագրութիւնը կը կնճռոտի, և հարկ կ'ըլլայ նկատի առնել, որ Յակոբի Կ-Պոլիս գտնուիլը 1689'ին էր (§ 1791), և Դաւիթի մահը 1684'ին (ԽԱՉ. 220), որով բնական էր Ստեփանոսի յաջորդութիւնը այդ տարեթիւէն հաշուել։ Արդ Յոհանը Սեւանէ փախչելէն ետքը ձերբակալողը Ստեփանոս եղած բռնելով (ԽԱՉ. 150), Յոհանի երկրորդ ձերբակալութիւնը և ուրացութիւնը, և «չէր ինչ արժան» կատարած մատնութիւնը, և Ստեփանոսի «բռնադատեալ ամ մի» բանտարկութիւնը, և ծանր տուգանքով

*ազատուիլը, 1685'ին չէր կրնար ըլլալ* (ԽԱՁ. 151): *Ուստի թուականները սխալներ են՝ թաղրելով՝ Յոհանի երկրորդ ձերբակալութիւնը* 1685'*ին, և Սանփանոսի բանտարկութիւնը աւելի մերձաւորաբար* 1687'*ին պիտի դնենք. կամ եթէ Սանփանոսի բանտարկութիւնը* 1685 *պիտի իմանանք, այն ատեն Սանփանոս՝ Դաւիթի յանձնարարութեամբ ձերբակալած կ'ըլլայ Յոհանը մերձաւորաբար* 1683'*ին: Ամէն սաթի մէջ ճիշդը ստուգելու փաստեր չունենալով Նոր հետազօտողներու կը թողունք կնճիռին լուծումը: Մեզի բաւական ըլլայ ըսել թէ Յոհան Շեխ-Մուսին, Սուլէյման շահին մօտ կ'ամբաստանէ Սանփանոսը, և բանտարկել կու տայ զայն, և զայլ Քահանայս վարդապետս և եպիսկոպոսս, և դրեալ զոմանս ի կոճեղս ծանրագոյնս, ուր կը մնան ամ մի քօլանդով, և հագիւ հազար թուման վճարելով Նախարարաց և մեծամեծաց, հազար թուման ալ արքային, և տարեկան երեք հարիւր թուման տուգանք խոստանալով կ'ազատին: Տարեկանը կը վճարուի մինչև* 1691, *և հազիւ կը ջնջուի* 1692'*ին Ջուղայի գիւղաւագ Աւետիսին ձեռքով* (ԽԱՁ. 151): *Այդ եղելութիւնները ամբողջաբար Եղիազարի կաթողիկոսութեան միջոցին հանդիպելով, դարմանալի է անոր անունին բնաւ չյիշուիլը:*

**1823.** *Նոյն այս միջոցին կ'իյնան Յովհաննէս Մրքուզ վարդապետին գիտական և կրօնական վիճաբանութիւններուն մի մասը, զորս բրած է քրիստոնէական վարդապետութիւնները պաշտպանելու համար: Այս առաջին մասը Սուլէյման շահին օրով կատարուած է, թէպէտ աւելի նշանաւոր մասը տեղի ունեցած է Հիւսէյին շահին օրով, որ* 1694'*ին իւր հօրը յաջորդեց: Մրքուզի պատճառաբանութիւնները, ինչպէս կը քաղէ պատմիչը, կը հիմնուին դպրոցական ոճին վրայ, որուն անտեղեակ ըլլալով շահն ու իսլամ կրօնականները, մեծ զարմանքով և հիանալով կը խոստովանին, թէ և ի յԵւ-րոպիայ ի Ֆրանկս՝ ոչ գոյ նման սմա* (ԽԱՁ. 175), *վասնզի ունէր հաւատաքննութեան և դրամաքննութեան իշխանութիւն ի մէջ իւր ժողովեալ ունէր* (ԽԱՁ. 174):

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄՐՔՈՒԶ**

**1824.** *Մինչև հիմայ յառաջ բերուած եղելութիւնները առանց Եղիազար կաթողիկոսի միջամտութեան կամ գործակցութեան կատարուած են, ինչ որ մեզի իրաւունք կու տայ եզրակացնել, թէ որչափ Եղիազար կաթողիկոսութենէն առաջ ձեռներէց և ցրուած գործունէութիւն ունէր, այնչափ ալ հանդարտ և ամփոփ պաշտօնավարութիւն ունեցած է օրինաւորապէս կաթողիկոսանալէն ետքը: Տարիքն է՞ր արդեօք պատճառը, թէ չափազանց յոգնածութիւնը, թէ ոչ ամէն տեսակ արկածներէ և յախուռն ձեռնարկներէ ետքը տեսակ մը յուսախաբ հիասթափութիւնն է՞ր՝ որ զինքը քաշուելու և ամփոփուելու կը ստիպէր, մենք որոշել չենք կրնար. միայն եղելութիւնը հետաքրքիրներու մտադրութեան կը ներկայենք: Ընդհանրապէս բոլոր յիշատակարաններ և նոր պատմագրողներ Եղիազարի գործունէութիւնը Մայրաթոռոյ նիւթական և բարեկարգական շրջանակին մէջ կը պարփակեն, և նոյն վիճակին մէջ փակուած ու վերջացած կը ցուցնեն: Նորերէն մէկ մը միայն՝ Եղիազարի կը վերագրէ Արևմուտքի հետ յարաբերութեանց ձգտումներ, և Լատին կրօնաւորներու հանդէպ հաշտ ընթացք, մինչև իսկ Հայ եկեղեցիներու մէջ քարոզելու թոյլտուութիւն տալ, և* 1686'*ին վախճանող Լատին միաբան Ռու աբեղան մեծ հանդէսով Հայոց գերեզմանատան մէջ թաղելու արտօնութիւն շնորհել* (ՁԱՄ. Բ. 37): *Եղիազարի բոլոր կեանքը համէականութեան հակամէտ եղած չէ, և յայտնի գործերու զիմաց չատ նշանակութիւն չեն ունենար Աւետիք Եւդոկիացիին անոր վերագրած լատինամիտ տեսութիւնները: Աւետիք այդ յիշատակները գրած է երբ հաւատաքննական բանտարկութեան մէջ դաւանափոխութեամբ ազատութիւն գտնելու կը միտէր, և զինքն կանուխէն այդ մտքի վրայ եղած ցուցնելու դիտմամբ, նոյնը իւր ձեռնադրող կաթողիկոսէն իրեն աւանդուած կ'ուզէր կարծեցնել: Իբր այն թէ Եղիազար զինքն ձեռնադրած ատեն յանձնարարած ըլլայ Հնազանդել Պապին, ի Բաժակն ջուր խառնել ծածուկ, և Բղխումն ի Հօրէ և ի յՈրդւոյ բխել,*

**ԵՂԻԱԶԱՐԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

և թէ Երուսաղէմէ Եղիա վարդապետը երեք եպիսկոպոսօք Հռոմ ղրկած ըլլայ, և թէ ինքն ալ եօթն վարդապետօք Հռոմ երթալու վրայ եղած ըլլայ (74 ԱՐՐ. 75), երբոր էջմիածին հրաւիրուեցաւ (§ 1703)։ Ստոյգ եղելութիւններ բնաւ չեն ներեր այդպիսի ենթադրութիւններ ընել Եղիազարի վրայ, թէպէտ նա կրնար համարձակ բարեկամական յարաբերութիւններ մշակել Արեւմըտեանները շահելու, և անոնց միջնորդութեամբ Հայութեան լաւագոյն կացութիւն մը հոգալու նպատակով։

**ԵՂԻԱԶԱՐԻ ՄԱՀԸ**

**1825**. Այդ տեսութեամբ կրնանք ընդունիլ, թէ Եղիազար ալ իւր նախորդին Յակոբի նման կեանքին վերջին միջոցին էջմիածինէ Կ-Պոլիս ուղեւորելու դիտաւորութիւն ունեցած է, այնտեղ աւելի դիւրութեամբ Եւրոպացոց հետ բանակցութեան մտնելու, և անոնցմէ քաղաքական օգնութիւն ստանալու յուսով։ էջմիածինէ մեկնիլը կը դրուի 1691'ին, բայց Կարինէ կը պարտաւորուի ետ դառնալ, ճանապորդութիւնը վտանգալից տեսնելով (ԶԱՄ. Բ. 37)։ Օսմանեան կայսրը Մէհէմմէտ Դ գահընկէց եղած էր 1687 նոյեմբեր 8'ին, ներքին խռովութեանց և ապստամբութեանց պատճառով (ԺՈԻ. 296), որ բոլոր սահման գաւառներուն մէջ ալ տարածուեցան Սէկէն Օսման և Կէտուք Մէհէմմէտ փաշաներու գլխաւորութեամբ, և վեց տարի տեւեցին, Սիւլէյման Բ և Ահմէտ Բ սուլտաններուն օրով (ԺՈԻ. 299)։ Մինչ 1691 տարւոյն յուլիս 14'ին Սիւլէյման Բ կը մեռնէր և եղբայրը Ահմէտ Բ կը յաջորդէր, և երկրին խաղաղութիւնը աւելի վրդովուած էր, և Եղիազար չվստահացաւ այդ չփոթ միջոցին ցամաքային ճանապորդութիւնը շարունակել, և ոչ ալ կրնար յաջողութիւն յուսալ Կ-Պոլսոյ մէջ։ Կարինէ ետ դարձաւ էջմիածին, և ուղեւորութեան դժուարութիւններէ ալ տկարացած, քիչ օր ետքը վախճանեցաւ 1691 օգոստոս 8'ին, 9 տարի կաթողիկոսութենէ ետքը, ինչպէս ընդհանրապէս ընդունուած է, թէպէտ Քանաքեռցին 1690 օգոստոս 14'ին կը դնէ 8 տարի կաթողիկոսութիւն հաշուելով, և մահուան օրը էջմիածին մտնելու օրուան հետ նոյն բերելով (ԶԱՔ. Բ. 101)։ Եղիազար թաղուած է Ս. Գայիանէի իւրաչէն գաւիթին աջակողմը (ՄՈՎ. 278)։ Եղիազարի Կ-Պոլիս երթալ ուզելուն ուրիշ մէկ նպատակն եղած կ'ըլլայ՝ կրօնական վէճերու ու խտրութեանց բորբոքումը, որոնք Կ-Պոլսոյ մէջ զայրացած էին, և որոնց վրայ իւր մտադրութիւնը հրաւիրած էր Երեմիա Քէօմիւրճեան 1690'ին գրած նամակովը (§ 1815)։ Սակայն շատեր դուրս ելանելոյն (ԶԱՄ. Գ. 722), կամ խելահաս և խոհական անձեր չըլլալոյ միտքը կը վերագրեն Եղիազարի (ՄՈՎ. 278), մինչ ուրիշ մը այս խռովութիւններս հանդարտելոյ համար Կ-Պոլիս երթալոյ որոշումը կը յիշէ (ԶԱՄ. Բ. 36)։ Բայց որն և ըլլայ ստոյգը, անձամբ կամ պատուիրակով ազգային ընդհանուր գործերուն միջամտելու գաղափարը շատ ուշ ծագած է Եղիազարի միտքը, և իրագործուած ալ չէ։ Իսկ Եղիազարի անձին և ձեռնարկներուն, կարողութեան և ուղղութեան վրայ պատմութեանս ընթացքին մեր տեսութիւնները յայտնած ըլլալով, աւելորդ կը սեպենք մահուընէ ետքը նոյն դիտողութիւնները ամփոփել, որ անգամ մը գրուածները կրկնել պիտի ըլլար։

# Տ. ՆԱՀԱՊԵՏ Ա. ԵԴԵՍԱՑԻ

**1826**. Եղիազարի յաջորդին ընտրութիւնը լրացեալ գործողութեան մը պէս կը ներկայանայ պատմութեան մէջ, զի Եղիազարի մահուանէ միայն երկու օր ետքը, օգոստոս 10'ին կաթողիկոս կը հռչակուի իւր ձեռնասուն աշակերտը Նահապետ եպիսկոպոս Եդեսացի (ԶԱՄ. Գ. 724)։ Անշուշտ հանգուցեալ կաթողիկոսի կամքը կար այդ մասին, որ Մայրաթոռոյ միաբանութեան կողմէն խղճմտօրէն յարգուեցաւ, մինչեւ

իսկ գրող ալ եղաւ, թէ Նահապետ Նոյն եւ յետոյ կանոնիկոս ծառայեաց (ՉԱՄ. Բ. 37):

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՈՒ ՆԿԱՐԱԳԻՐ**

Այդ վերջին պարագան բուն յիշատակողը Աւետիք Եւդոկիացին է, որ իր վերջին օրերու յիշատակարանին մէջ կը գրէ, թէ հիւանդ Եղիազարը իր մեռնիլը զգալով մահիճէ ելած, եկեղեցի իջած, պատարագ մատուցած, Նահապետը օծած, և նորէն հիւանդութեան մահիճը դառնալով Նոյնժամայն հոգին աւանդած ըլլայ (94 ԱՐՐ. 112): Սակայն ընտրելագոյն աղբիւրներ, որ օգոստոս 8'ին Եղիազարի մահը և օգոստոս 10'ին Նահապետի օծումը կը դնեն, այդ ենթադրութիւնը կը հերքեն. և միայն կրնանք ընդունիլ Եղիազարի կտակային կամքը Նահապետը կաթողիկոսացնելու, զոր միաբանութիւնն ալ կը յարգէ մեծապարծ կաթողիկոսին պատուոյն: Միաբանութիւնը այդ առթիւ ալ բացարձակ իրաւամբ գործած կ'ըլլայ, ոչ մերձաւոր իշխանաւորներու և ոչ ալ հեռաւոր աթոռներու հաւանութեան դիմելով: Բայց և այնպէս ոչ մի կողմէն նկատողութիւն չյարուցուիր, և ամէն կողմէ առանց դիտողութեան կ'ընդունուի Նահապետի կաթողիկոսութիւնը: Այդպէս բրած էր միաբանութիւնը Յակոբի ընտրութեան առեն ալ. իսկ Եղիազարին ընտրութիւնը բացառիկ հանգամանքներու հետեւանք եղած էր. և անոր մահուընէ ետքը՝ իր նախընթաց սովորութեան կը դառնայ: Նահապետ Եդեսացին, որ իբր Եղիազարի ձեռնասունն ու աշակերտը, խորհրդակիցն ու գործակիցը կը ներկայացուի, երբեք յիշուած չէ ոչ Եղիազարի ինքնահնար կաթողիկոսութեան, և ոչ ալ օրինական հայրապետութեան միջոցին, որով մութ կը մնայ մեզի թէ որ ժամանակին նա Եղիազարի մօտ աշակերտ մտած է, և որ եղելութեանց մէջ Եղիազարի գործակից եղած է, եթէ այսչափ անոր հաւատարիմն ու մտերիմն էր, որ իրեն յաջորդելու կը նշանակէր, եթէ անձամբ չօծեր ալ: Նահապետ կը նկարագրուի, ճիշդ Եղիազարի համանման տիպարով անձ մը, ուսանող, վարդապետ, առաջնորդ իշխեցող (ՉԱՄ. 26), խստապահանջ, և սաստկութեամբ վարող կաթողիկոսութեան գործը (ԽԱՉ. 151), թէպէտեւ կարդացաւ եւ յօրինեաց Բոյլ էր (74 ԱՐՐ. 113): Այդպէս կը նկարագրեն զինքը մօտէն ճանչցողներ, որով չարդարանար Չամչեանի պարզաբար այր բարեսէր եւ հեզահոգի բանը (ՉԱՄ. Գ. 724), զոր իբր գովասանք կու տայ. իբր թէ Նահապետ համեմատութեան բարեկամ և դիւրամէտ, և մինչեւ իսկ զայն ընդունած անձ մը եղած ըլլայ: Սակայն պատմութեան ընթացքը պիտի ցուցնէ թէ Չամչեանի ենթադրութիւնը այս անգամ ալ հիմնական չէ:

**1827.** Ազգային կեանքի զանազան պատահարներու պատմութեան չանցած, յիշատակենք Նահապետի շինարար գործերը, որոնց համար հաւանաբար դիւրութիւններ ունեցաւ Եղիազարի թողած անձնական ստացութիւններէն:

**ՇԻՆԱՐԱՐ ԱՐԴԻՒՆՔ**

Դիտելի պարագայ մըն է, որ կաթողիկոսներ կրնան մեծագործ և մեծածախ շինութեանց ձեռնարկել, երբ ընդհանուր կերպով աթոռոյ խեղճութեան և աղքատութեան գանգատներ ամէն կողմէ կը բարձրանան: Այդ անհամաձայն եղրներու մեկնութիւնը պէտք է գտնել այն դրութեան մէջ, որ կաթողիկոսներ, ինչպէս նաեւ անոնցմէ ետեւ եկող առաջնորդներ, անջրպետ մը դրած էին իրենց անձնական ստացութեանց և աթոռոյ սեփականութեանց մէջ: Ինչ որ իբր իրաւունք և իբր նուէր կը ստանային, կամ թէ կեղեքմամբ ալ կը հաւաքէին, իբրեւ իրենց անհատական ստացութիւն կը նկատէին, և իրենց կենցաղին և նպատակին կամ թէ շինարար ձեռնարկներու կը գործածէին: Այս կերպով աթոռին հանրային ստացութեան քիչ բան կը մնար, կալուածական հասոյթներ կամ որոշ տուրքեր միայն, որոնք շատ չէին պտղաբերեր, և միաբանութեան ուտեստին ու զգեստին ու պահեստին գործածուելու գումարը կ'անօսրանար, աթոռներ ու միաբանութիւններ խեղճ ու կարօտալից վիճակ կ'անցրնէին, և աթոռներու վրայ ծանրացող տուրքեր անվճար կը մնային և կը դիզուէին: Այդ կերպով եղած է անշուշտ Նահապետի վարմունքը, եթէ անձուկ և դժուարին օրերու մէջ նշանաւոր շինութիւններ կատարեց,

և թէ Երուսաղէմէ Եղիա վարդապետը էրէ+ էղէօլօղուսօ+ Հռոմ գրկած ըլլայ, և թէ ինքն ալ եօյն վէրտադեթօ+ Հռոմ երթալու վրայ եղած ըլլայ (74 ԱՐՐ.75), երբոր էջմիածին հրաւիրուեցաւ (§ 1703)։ Սոյդ եղելութիւններ բնաւ չեն ներեր այդպիսի են-թադրութիւններ ընել Եղիազարի վրայ, թէպէտ նա կրնար համարձակ բարեկամա-կան յարաբերութիւններ մշակել Արեւմտ-եաններն չահելու, և անոնց միջնորդու-թեամբ Հայութեան լաւագոյն կացութիւն մը հոգալու նպատակով։

1825. Այդ տեսութեամբ կրնանք ըն-դունիլ, թէ Եղիազար ալ իւր նախորդին Յակոբի նման կեանքին վերջին միջոցին էջմիածի-նէ Կ-Պոլիս ուղեւորելու դիտաւորութիւն ունեցած է, այնտեղ աւելի դիւրութեամբ Եւրո-պացոց հետ բանակցութեան մտնելու, և ա-նոնցմէ քաղաքական օգնութիւն ստանալու յուսով։ էջմիածինէ մեկնիլը կը դրուի 1691'ին, բայց Կարինէ կը պարտաւորուի ետ դառնալ, ճանապարհութիւնը վտանգալից տեսնելով (ՋԱՄ.Բ.37)։ Օսմանեան կայսրը Մէհէմմէտ Դ գահընկեց եղած էր 1687 նո-յեմբեր 8'ին, ներքին խռովութեանց և ա-պստամբութեանց պատճառով (ԺՈՒ.296), որ բոլոր ասիական գաւառներուն մէջ ալ տարածուեցան Եէկէն Օսման և Կէտուք Մէ-հէմմէտ փաշաներու գլխաւորութեամբ, և վեց տարի տեւեցին, Սիւլէյման Բ և Ահմէտ Բ սուլտաններուն օրով (ԺՈՒ.299)։ Ծիչդ 1691 տարւոյն յուլիս 14'ին Սիւլէյման Բ կը մեռնէր և եղբայրը Ահմէտ Բ կը յաջոր-դէր, և երկրին խաղաղութիւնը աւելի վրդ-ովուած էր, և Եղիազար չվստահացաւ այդ չփոթ միջոյին ցամաքային ճանապարհութիւնը շարունակել, և ոչ ալ կրնար յաջողութիւն յուսալ Կ-Պոլսոյ մէջ։ Կարինէ ետ դարձաւ էջ-միածին, և ուղեւորութեան դժուարութիւն-ներէ ալ սկարացած, քիչ օր ետքը վախ-ճանեցաւ 1691 օգոստոս 8'ին, 9 տարի կա-թողիկոսութենէ ետքը, ինչպէս ընդհանրա-պէս ընդունուած է, թէպէտ Քանաքեռցին 1690 օգոստոս 14'ին կը դնէ 8 տարի կա-թողիկոսութիւն հաշուելով, և մահուան օրը էջմիածին մտնելու օրուան հետ նոյն բերե-լով (ՁԱՔ.Բ.101)։ Եղիազար թաղուած է Ս. Գայիանէի իւրաչէն գաւիթին աջակողմը (ՄՈՎ.278)։ Եղիազարի Կ-Պոլիս երթալ ու-զելուն ուրիշ մէկ նպատակն եղած կ'ըլլայ՝ կրօնական վէճերու ու խտրութեանց բոր-բոքումը, որոնք Կ-Պոլսոյ մէջ զայրացած էին, և որոնց վրայ իւր մտադրութիւնը հրաւիրած էր Երեմիա Քէօմիւրճեան 1690'ին գրած նամակովը (§ 1815)։ Սակայն չատեր ղըրը էմաաթանէ (ՁԱՄ.Գ.722), կամ խելահաս և խոհական անձեր չըլլալու միտքը կը վերագրեն Եղիազարի (ՄՈՎ.278), մինչ ուրիշ մը տէօ խաօվլաբիաները հանդարդելու համար Կ-Պօլսէ ելնալու որոշումը կը յիշէ (ՁԱՄ.Բ.36)։ Բայց որն և ըլլայ ստոյգը, անձամբ կամ պատուիրակով ազգային ընդհանուր գործե-րուն միջամտելու գաղափարը չատ ուշ ծա-գած է Եղիազարի միտքը, և իրագործուած ալ չէ։ Իսկ Եղիազարի անձին և ձեռնարկ-ներուն, կարողութեան և ուղղութեան վը-րայ պատմութեանս ընթացքին մեր տեսու-թիւնները յայտնած ըլլալով, աւելորդ կը սեպենք մահուընէ ետքը նոյն դիտողու-թիւնները ամփոփել, որ անգամ մը գը-ուածները կրկնել պիտի ըլլար։

# Տ. ՆԱՀԱՊԵՏ Ա. ԵԴԵՍԱՑԻ

1826. Եղիազարի յաջորդին ընտրու-թիւնը լրացեալ գործողութեան մը պէս կը ներկայանայ պատմութեան մէջ, զի Եղիա-զարի մահուանէ միայն երկու օր ետքը, օգոստոս 10'ին կաթողիկոս կը հռչակուի իւր ձեռնասուն աշակերտը Նահապետ ե-պիսկոպոս Եդեսացի (ՁԱՄ.Գ.724)։ Անշուշտ հանգուցեալ կաթողիկոսի կամքը կար այդ մասին, որ Մայրաթոռոյ միաբանութեան կողմէն խղճմտօրէն յարգուեցաւ, մինչեւ

ԵՂԻԱԶԱՐԻ ՄԱՀԸ

իսկ գրող ալ եղաւ, թէ Նահապետ Նորա էր յետոյ կոչեցելոց ծառայից (ՁԱՄ. Բ. 37)։

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՈՒ ՆԿԱՐԱԳԻՐ**

Այդ վերջին պարագան բուն յիշատակողը Աւետիք Եւդոկիացին է, որ իւր վերջին օրերու յիշատակարանին մէջ կը գրէ, թէ հիւանդ Եղիազարը իւր մեռնիլը զգալով մահիճէ ելած, եկեղեցի իջած, պատարագ մատուցած, Նահապետը օծած, և նորէն հիւանդութեան մահիճը դառնալով Նոյնժամայն հոգին աւանդած ըլլայ (94 ԱՐՐ. 112)։ Սակայն ընտրելագոյն աղբիւրներ, որ օգոստոս 8'ին Եղիազարի մահը և օգոստոս 10'ին Նահապետի օծումը կը դնեն, այդ ենթադրութիւնը կը հերքեն. և միայն կրնանք ընդունիլ Եղիազարի կտակային կամքը Նահապետը կաթողիկոսացնելու, զոր միաբանութիւնն ալ կը յարգէ մեծագործ կաթողիկոսին պատւոյն։ Միաբանութիւնը այդ առթիւ ալ բացարձակ իրաւամբ գործած կ'ըլլայ, ոչ մերձաւոր իշխանաւորներու և ոչ ալ հեռաւոր աթոռներու հաւանութեան դիմելով։ Բայց և այնպէս ոչ մի կողմէն նկատողութիւն չյարուցուիր, և ամէն կողմէ առանց դիտողութեան կ'ընդունուի Նահապետի կաթողիկոսութիւնը։ Այդպէս բրած էր միաբանութիւնը Յակոբի ընտրութեան առեն ալ. իսկ Եղիազարին ընտրութիւնը բացառիկ հանգամանքներու հետեւանք եղած էր. և անա անոր մահուընէ ետքը՝ իւր նախընթաց սովորութեան կը դառնայ։ Նահապետ Եդեսացին, որ իբր Եղիազարի ձեռնասունն ու աշակերտը, խորհրդակիցն ու գործակիցը կը ներկայացուի, երբեք յիշուած չէ ոչ Եղիազարի ինքնահնար կաթողիկոսութեան, և ոչ ալ օրինական հայրապետութեան միջոցին, որով մութ կը մնայ մեզի թէ որ ժամանակին նա Եղիազարի մօտ աշակերտ մտած է, և որ եղելութեանց մէջ Եղիազարի գործակից եղած է, եթէ այնչափ անոր հաւատարիմն ու մտերիմն էր, որ իրեն յաջորդելու կը նշանակէր, եթէ անձամբ չօծեր ալ։ Նահապետ կը նկարագրուի, ճիշդ Եղիազարի համանման տիպարով անձ մը, ծամախօս, փառասէր, ահարկու իշխեցող (ՁԱՄ. 26), խստապահանջ, և սաստկութեամբ վարող կաթողիկոսութեան գործը (ԽԱՉ. 151), թէպէտեւ կորովալից և յօրինուած բայց էր (74 ԱՐՐ. 113)։ Այդպէս կը նկարագրեն զինքը մօտէն ճանչցողներ, որով չարդարանար Զամչեանի պարզաբար այլ բարեբեր և հեզահոգի բանը (ՁԱՄ. Գ. 724), զոր իբր գովասանք կու տայ. իբր թէ Նահապետ հասմէջականութեան բարեկամ և դիւրամէտ, և մինչեւ իսկ զայն ընդունած անձ մը եղած ըլլայ։ Սակայն պատմութեան ընթացքը պիտի ցուցնէ թէ Զամչեանի ենթադրութիւնը այս անգամ ալ հիմնական չէ։

**1827.** Ազգային կեանքի զանազան պատահարներու պատմութեան չանցած, յիշատակենք Նահապետի շինարար գործերը, որոնց համար հաւանաբար դիւրութիւններ ունեցաւ Եղիազարի թողած անձնական ստացութիւններէն։

**ՇԻՆԱՐԱՐ ԱՐԴԻՒՆՔ**

Դիտելի պարագայ մըն է, որ կաթողիկոսներ կրնան մեծագործ և մեծածախ շինութեանց ձեռնարկել, երբ ընդհանուր կերպով աթոռոյ խեղճութեան և աղքատութեան գանգատներ ամէն կողմէ կը բարձրանան։ Այդ անհամաձայն եզրներու մեկնութիւնը պէտք է գտնել այն դրութեան մէջ, որ կաթողիկոսներ, ինչպէս նաեւ անոնցմէ ետեւ եկող աստիճանաւորներ, անջրպետ մը դրած էին իրենց անձնական ստացութեանց և աթոռոյ սեփականութեանց մէջ։ Ինչ որ իբր իրաւունք և իբր նուէր կը ստանային, կամ թէ կեղեքմամբ ալ կը հաւաքէին, իբրեւ իրենց անհատական ստացութիւն կը նկատէին, և իրենց կենցաղին և նպատակին կամ թէ շինարար ձեռնարկներու կը գործածէին։ Այս կերպով աթոռին հանրային ստացութեան քիչ բան կը մնար, կալուածական հասոյթներ կամ որոշ տուրքեր միայն, որոնք շատ չէին պտղաբերեր, և միաբանութեան ուտեստին ու զգեստին ու պաշտօնին գործածուելու գումարը կ'անօսրանար, աթոռներ ու միաբանութիւններ խեղճ ու կարօտալից վիճակ կ'անցրնէին, և աթոռներու վրայ ծանրացող տուրքեր անվճար կը մնային և կը դիզուէին։ Այդ կերպով եղած է անշուշտ Նահապետի վարմունքը, եթէ անձուկ և դժուարին օրերու մէջ նշանաւոր շինութիւններ կատարեց,

*որոնցմէ գլխաւորները Երեւանեցին կը յիշէ։ Ասոնք են Շողոկաթի եկեղեցին և վանատունը բոլոր յարակիցներով՝ Աղամալ Շոռոթեցի իշխանին ծախքով, Հրազդանէ հանուած առուն լեռ ծակելով և քարաժայռներ պատռելով՝ վանքին արտերը ոռոգելու համար, Երեւանի Զորագեղի վանքին եկեղեցիին ու խուցերուն նորոգութիւնը՝ բոլոր չրջակայ մասերով, Վաղարշապատ և Քանաքեռ և Կոնտ և ուրիշ չատ գիւղերու եկեղեցիներու չինութիւնները, այնպէս որ կրցաւ ըսուիլ, որ յերկիրն Երեւանայ որքան քարաշէն եկեղեցիք կան, բոլոր Մեծի [illegible] ի ամանէ են շինեցեալ։ Ասոնցմէ զատ Նահապետ [illegible] և [illegible] շինութիւն և [illegible] գործս յաջողեաց և յերկիրս, կալուածներ աւելցուց, և եղածները ապահովցուց օրինական և փաստաւորական վաւերագիրներով։ Ինքն սկսաւ և յառաջեցուց Քասաղ գետի վրայ Օշականի եկեղեցին և Մեծամօր կամուրջը* (ԶԱՄ. 26) *որ մահուընէն ետքը լրացաւ* 1706'*ին* (ԶԱՄ. Բ. 38)։ *Այդ չինութիւններ հետզհետէ կատարուեցան Նահապետի կաթողիկոսութեան միջոցին, բայց որովհետեւ միւս եղելութեանց հետ կապ չունին, ամէնքը մէկէն այստեղ քաղել յարմարագոյն սեպեցինք։ Իրօք ալ այդ չինարար զբաղումները տեղի ունեցան աւելի Նահապետի առաջին տարիները, երբ չէին սկսած ներքին չփոթութիւնները, որոնք տեղի ունեցան ի [illegible] կաթողիկոսութեան տարին,* 1695'*ին* (ԶԱՄ. 27)։

**1828**. *Առով ըսել չենք ուզեր, թէ առաջին տարիներուն մէջ ալ միջադէպներ տեղի չունեցան, վասնզի Նահապետ [illegible] էր, և [illegible] է [illegible] եկեղեցականաց* (ԶԱՔ. Բ. 136), *թէպէտ իր անաչառութիւնը ոչ միշտ նպատակին հասնելու կը ծառայէր։ Կաթողիկոսութեան առջի ամիսներուն մէջ, վշտանալու առիթ ունեցաւ Աղթամարայ կաթողիկոս Թովմասի վրայ, որ Եղիազարին հպատակութիւն էր յայտնած, և Էջմիածինի տեւական հնազանդութիւն խոստացած* (§ 1817), *բայց առով իր մեծամտութիւնը չէր մեղմացած։ Որոշ գրուած չէ, բայց այս միայն յայտնի է, որ Նահապետ Թովմասի վրայ բարկանալով, զայն պաշտօնէն կը զրկէ, և Աւետիս եպիսկոպոս մը կաթողիկոս ձեռնադրելով Աղթամարի աթոռին տիրանալու կը ղրկէ։ Սակայն Թովմաս չընկճուիր։ Աւետիս Պարսկաստանէ կու գար, մինչ Աղթամար՝ Օսմանեան երկիր էր, և Թովմասի չատ դիւրին եղաւ Աւետիսը վտարել տալ կուսակալին ձեռքով, և իր աթոռը ձեռքէ չհանել։ Որպէսզի իր ծերութիւնն ալ պատճառ չըլլայ աթոռին յանկարծ դատարկանալուն և Աւետիսի յաջողելուն, Սահակ Արծկեցի եպիսկոպոսը աթոռակից կաթողիկոս կ'օծէ, որ յաջորդութիւնը ապահովէ Աղթամարի եպիսկոպոսներուն վրայ՝ Էջմիածինէ անկախաբար։ Որչափ Թովմաս Ցերինցիին առաջին գործը օգտակար էր եկեղեցւոյ խաղաղութեան, այնչափ վնասակար կը դառնայ վերջին ընդդիմութիւնը. սակայն Թովմասի իրաւամբ կրնար ծանր գալ Նահապետի բրածը, տեսնալով որ էր [illegible] (ՕՕ ԲԻԶ. 1198)։ Մենք ալ պէտք է ըսենք, թէ անաչառ խստութիւնը վարչական չրջանակի մէջ՝ ոչ միշտ օգտակար արդիւնքներ յառաջ կը բերէ, և Նահապետ աւելի խոհեմութեամբ վարուած, և ապագային համար աւելի օգտակար ընթացք բռնած կ'ըլլար, եթէ առիթ չտար խզելու այն կապը՝ որ երկու աթոռներուն միջեւ բարեբախտաբար հաստատուած էր։ Աւետիս իրեն տրուած աթոռը գրաւել չկրնալով, հետապնդութենէն ձեռնթափ չեղաւ, և գինքն դեռ գործի վրայ կը տեսնենք մինչեւ* 1697, *երբ Թովմաս աւելի գրգռուելով և Օսմանեան կուսակալը գրգռելով, Վանայ մէջ նստող Էջմիածինի հպատակ եպիսկոպոսն ալ հեռացնել տուաւ, և Վանայ վիճակին վրայ Աղթամարեան եպիսկոպոս հաստատեց, և Նահապետ իր իշխանութիւնը ընդարձակելու աշխատած ատեն, վիճակ մըն ալ իր ձեռքէն հանուած տեսաւ։ Նահապետի առաջին քայլը կրնանք դնել* 1693'*ին*։

ԱՂԹԱՄԱՐԻ ԽԶՈՒՄԸ

**1829**. *Երբ Եղիազար վախճանեցաւ* 1691'*ին* (§1825), *Կ-Պոլսոյ աթոռը* 1689'*էն սկսելով աչխարհական տէրակալներու ձեռքը կը մնար, քահանայ փոխանորդի մը գործակցութեամբ* (§ 1812), *և երկու տարիէ*

աւելի էր որ այդ դրութիւնը կը տեւէր։ Բայց այս ձեւն ալ ոչ յարատեւ կրնար ըլլալ, և ոչ ժողովրդական պահանջները կը գոհացնէր, և աւելի կ'ընծայէր ճարպիկ եկեղեցականի մը իւր ձգտումները յաջողցնելու։ Այս անգամ ալ առաջ անցնողը եղաւ Մատթէոս եպիսկոպոս Կեսարացի, մականուանեալ Սարի, որ է Շէկ, անշուշտ մազին ու մօրուքին գոյնին պատճառաւ, որ պատրիարքական աթոռը բարձրացաւ 1692'ին, և իբր երկու տարի պաշտօնին վրայ մնաց (ԶԱՄ. Գ. 721)։ Մատթէոսի օրով չարունակեցին Հայու ու Ֆրէնկի, ուղղափառի ու օտարադաւանի բուռն վէճերը, որոնց վրայ ընդհանուր տեղեկութիւններ տուած ենք (§ 1813), այլ իւր օրով մասնաւոր եղելութիւններ կամ յիշատակաց արժանի պարագաներ չեն յիշուիր։ Չենք կրնար այդ լռութիւնը համարձակօրէն Մատթէոսի խոհականութեան վերագրել, զի այդպիսի արժանիք մը իրեն պատշաճեցնելու չեն նպաստեր իւր ընթացքն ու գործերը։ Այսու հանդերձ փառասիրական նպատակներու մէջ բաւական յաջողակ եղած պիտի ըլլայ, զի երբոր Կ-Պոլսոյ աթոռը անբաւական գտաւ իւր ձգտումներուն, կամ թէ երբոր գայթիգայթի տեսաւ իւր դիրքը, կրցաւ Կիլիկիոյ աթոռին համար ազգային հաւանութիւն և պետական հրովարտակ ստանալ, և այսպէս զօրացած Սիս երթալ ու Աստուածատուր Նարին կաթողիկոսը մերժելով տեղը անցնիլ, ինչպէս որ սա ալ ըրած էր Գրիգոր Պիծակին (§ 1816)։ Երբոր Կ-Պոլսոյ աթոռը կը պարպուէր Սարիի հեռանալով, կամ թէ երբոր Սարիի դիրքը կը խախտուէր, զայն կը գրաւէր Եփրեմ Ղափանցին, որ անգամ մը 20 ամիս նոյն պաշտօնը վարած էր (§ 1812), և 8 տարի ետքը կը յաջողէր զայն վերստին ձեռք ձգել 1694'ին։ Ղափանցիին յաղթանակը անաչառ հայադաւանութեան յաղթանակն էր, բայց չենք վարանիր յայտարարել, թէ որչափ գովելի նկատենք Եփրեմի զգացումները ազգային եկեղեցւոյ պաշտպանութեան համար, նոյնը պիտի չի կրնանք ըսել իւր վարմունքին և գործելու կերպին համար, զի բուռն ընդդիմութիւնը նպատակին հասնելու չնպաստեր, որչափ կրնայ ընել խոհական հաստատամտութիւնը։ Պատմական ճշմարտութենէ հեռացած չենք ըլլար ըսելով, թէ Եփրեմի և նմաններուն խստութիւնները աւելի նպաստեցին հռոմէականներուն զօրանալուն և կազմակերպուելուն, մինչ պիտի չկարենային օգտուիլ պատրիարքներու հաստատամիտ, բայց և խոհական ընդդիմութենէն։

**ՄԱՏԹԷՈՍ ԵՒ ԵՓՐԵՄ**

**ԵՐԵՄԻԱ ՔԷՕՄԻՒՐՃԵԱՆ**

**1830.** Եփրեմի պատրիարքութենէն ոչ շատ ետքը, 1695'ին, ամսաթիւր անյայտ, կը վախճանէր Երեմիա Չէլէպի Քէօմիւրճեան (ԶԱՄ. Գ. 723), որուն անունը քանիցս տուինք պատմութեանս կարգին, անդստին այն ժամանակէն, որ Եղիազար իւր ինքնահնար կաթողիկոսութիւնը ստեղծեց (§ 1754)։ Երեմիա նշանակելի դէմք մըն է մեր ազգային գործիչներու մէջ՝ իւր ինքնատիպ և բազմակողմանի ձիրքերով։ Հաւասարապէս ներհուն եւրոպական լեզուներու, և տեղական յունարէնի, և տաճիկ ու արաբացի գրականութեան, փոխադարձաբար մէկէն միւսին թարգմանեց կարեւոր գործեր, և շատ եւս ազգայնոց համար՝ հայերէնի, և օտարաց համար հայերէնէ փոխարկեց, հայրենական լեզուին կատարեալ հմտութեամբը։ Իւր երկասիրութիւնները բազմաթիւ են և զարմանալի պէսպիսութիւն մը կը ներկայեն, որոնց մէջ Աստուածաշունչի տաճկերէնի թարգմանութենէն, մինչեւ զաւեշտ ոճով և ռամկօրէն բարբառով ոտանաւորներ կը գտնուին։ Ասոնց ամբողջական ցուցակը և գնահատութիւնը մատենագրութեանց մասնագէտներուն կը թողունք։ Մեր նպատակին ծառայողը իւր ժամանակակից պատմութիւնը պիտի ըլլար, եթէ գրչագիրը ունեցողներ զայն հրատարակած ըլլային ցարդ, ինչպէս եղած է Կ-Պոլսոյ տեղագրութիւնը պատմական յիշատակներով խառն, որուն հրատարակութեան աշխատեցաւ բժշկապետ Վահրամ Թորգոմեան (ԶԵՆ. Ը.)։ Երեմիա պաշտօններ վարած է պետական շրջանակներու մէջ, եւրոպական դեսպանատուններու քով, և ազգային պատրիարքներու մօտ, և անմիջական շփում ունեցած է ամէն կարեւոր գործերու հետ, իբրեւ խորհրդակից և

գործակից, և իբրև յանձնարարութեանց կատարող։ Ինքն անկեղծ և հաւատարիմ հայադաւան, երբեք բան մը ըրած չէ ազգային եկեղեցւոյ ինքնութենէն և յատկութիւններէն, բայց և եւրոպական զարգացման և առաւելութեանց տեղեակ, հակառակ եղած չէ անոնցմէ օգտուելէ, և միջասահման ընթացք և գործունէութիւն մը ունեցած է, ծայրայեղութիւններէ խորշելով, ոչ հռոմէադաւանութեան յարելով, և ոչ հայադաւանութենէ հեռանալով։ Երեմիա որդի էր Քէօմիւրճեան Մարտիրոս քահանային, և Նավրէզցի Ամբակումի քրոջ դրստերն։ Ամբակում բարեպաշտ և բարեկեցիկ անձ մը, անզաւակ ըլլալուն՝ իւր քրոջ թոռը եղող Երեմիան իրեն որդեգիր էր առած, որով մոհրեալ Երեմիա դպիր, Ամբակումի որդեգիր հոգեւոր որդի և ժառանգ է կոչուած, և անշուշտ սա ինքն եղած է Երեմիայի ստացած զարգացման և ընդարձակ գործունէութեան պատճառն ու հովանաւորը (ԹՈՐ. Բ. 402)։ Երեմիա 1695'ին 60 տարեկան մեռած ըլլալով (ԶԱՄ. Գ. 723), 1635'ին ծնած և 1647'ին 12 տարեկան եղած կ'ըլլայ, երբ հայրը կը գրէ, թէ ընդրանէկ որդեակս էմ, Տէր յօժարութեամբ, զԵրեմիա դըպիր, շնորհեալ եմ ինքեան մանկունի Ամբակումի որդեգրութեան (ԹՈՐ. Բ. 403)։ Բազմարդիւն և բազմաշխատ Երեմիայի 60 տարեկան վախճանիլը կը նկատենք, ոչ միայն տարիքին կողմէն վաղահաս, այլ և ազգային շահերուն կողմէն տարաժամ, զի անոր մահուանէ ետքը, աւելի սաստկացան բուռն ու խիստ ձեռնարկներ, զորս կրնար խափանել Երեմիա իւր խոհական խորհուրդներով, եթէ տակաւին ապրէր։ Գուցէ և իւր եղբօր Կոմիտաս քահանային վրայ ալ կ'ազդէր, զգուշացնելով զայն բուռն ընդդիմութիւններէ, որ անուղղակի կերպով պատճառ եղան աղետաբեր դէպքերու։

**1831.** Ամէնուրեք կաթոլիկութեան խնդիրն էր որ յուզմանց և չփոթութեանց պատճառ կ'ըլլար Հայութեան մէջ, և որուն սկզբնապատճառ պիտի նկատուին եւանգէլնոս և գործունեայ, բայց և յախուռն ու կրօնամոլ լատին արեգմներ, որոնք նիւթական միջոցներով հարուստ, քաղաքական պաշտպանութեամբ զօրաւոր, և ձեռներէց յանդըգնութեամբ նշանաւոր, սանձարձակ մըտած էին արկածեալ և չարչարեալ ժողովուրդի մը մէջ, որ իւր բնական բուռն տենչերուն հակառակ, բռնութեան և տգիտութեան ճիրաններուն ներքեւ կը ճնշուէր։

**ԿԱԹՈԼԻԿԱԿԱՆ ՃԻԳԵՐ**

Այս խեղճերուն աչքին շողացնելով փայլուն ոսկւոյն հրապոյրը, դրաւիչ զարգացման ուսումները, և ազդեցիկ պաշտպանութեան անխկալութիւնները, դիւրաւ կրնային իշխել տկար հոգիներու վրայ, որպէսզի ցուցուած առաւելութեանց հանդէպ, յանձն առնուն զոհել իրենց ուղղափառ եկեղեցին, ուրանան իրենց հայրենաւանդ ինքնութիւնը, և հետեւին օտարադաւան սկզբունքներուն։ Ուստի զարմանալի պէտք չէ երեւնալ, եթէ կը յաջողէին իրենց հետեւող խմբակ մը կազմել։ Սակայն մէկտեղ մեծ չէր իրենց արդիւնքը։ Նոյն ինքն Եւրոպացի ականատեսներ կը վկայէին, թէ շատ էին ջանքերն ու ծախսերը, որ Հռոմը գործ դրեց Հայերին կաթոլիկ դարձնելու համար, բայց ապարդիւն. և թէ այս ամէն գործունէութիւնը չէր կարող մի բան բերել (ԼԵՕ. Ա. 246)։ Թէպէտ Հայութեան մեծամասնութիւնը, և գրեթէ համրութիւնը, ամուր կը մնար իւր նախկին կացութեան մէջ, բայց ամենափոքր հատուած մըն ալ կը բաւէր՝ որ անոր անունով օտար միջամտութիւնը ներս սպրդէր, և ազգին խաղաղութիւնը վրդովէր, ներքին երկպառակութիւններ տարածուէին, և ընդդիմադիր կիրքեր բորբոքուէին։ Այսպիսի կացութեան հանդէպ մեղադրելի պէտք չէ սեպել, եթէ տկար զէնքերով հզօր բռնադատութեանց դէմ մաքառողներ, անձնապաշտպանութեան օրինաւոր մրցումով, ամէն հնարաւոր և հաւանական զէնքերու գործածութեան յորդորուէին։ Այս պէտք է ըլլայ ուղղադատ կշիռը, աղեկալի ժամանակամիջոցիս մանրամասնութիւնները՝ արդարապէս քննադատելու և կշռադատելու համար։ Կաթոլիկ քարոզիչներուն չափազանցութիւնները կը մեղադրէր նոյն իսկ Եւրոպական դեսպան մը, որ կը գանգատի թէ ասոնք ամենն ալ հոգեւորականաց դաւաճանէից տեղ դնել կ'ուզէին չերէնք, ինչպէսինքն տէօղաններէն աւելի դաւաճա-

ջեռ և լուսով կը համարէին, և չէին փափագէր հաղորդակցութեան մասին ալ ամենևին խզելէ (ԹՕԲ. 50)։ Դժուարութիւնը արտաքուստ եղած կ'ըլլար, եթէ միայն օտարազգի քարոզիչներ եղած ըլլային գործողները, բայց ներքուստ ալ օտար դպրոցներու Հայազգի աշակերտներ, և կերպ կերպ միջոցներով սրբացուած եկեղեցականներ, ընտանիքներու մէջ սողոսկելով և խղճահարներ հրապուրելով, պատճառ կ'ըլլային տանտին երկպառակութեանց, որոնց առջեւն առնել կը պարտաւորուէին անշուշտ ազգին գլուխներն ու գլխաւորները։ Ամէնէն աւելի յուզում պատճառող կէտն էր՝ Հայերը Հայ եկեղեցիներէ հեռացնելու սկզբունքը, խիղճեր վրդովելով բարեպաշտութեանց արգիլուորութեան և խորհուրդներու վաւերականութեան վրայ։ Այս ձեռնարկներ աւելի Կ-Պոլսոյ մէջ կը գործադրուէին, ուր կրօնաւորներ՝ դեսպաններ ունէին եռանդին իրենց պաշտպանութեան։

**1835.** Տարբեր էր քարոզիչներու գործունէութիւնը գաւառներու, և նոյն իսկ Մայրաթոռի մէջ։ Մինչ Կ-Պոլսոյ մէջ իրենցմէ հրապուրուածներուն Հայոց եկեղեցիներ մտնելը կ'արգելէին, գաւառներու մէջ իրենք մտնելու չէին խղճեր, և Նահապետ կաթողիկոսէ իբրեւ շնորհ կը խնդրէին և կը ստանային՝ Հայ եկեղեցիներու մէջ քարոզելու արտօնութիւնը։ Նահապետի կը վերագրուին ամենամօտ յարաբերութիւններ Հռոմի և հռոմէականներու հետ, միջնորդութեամբ Յիսուսեան միաբանութեան արեղաներու, որոնք գլխաւոր գործիչներ դարձած էին ներքին գաւառներու մէջ, ուր շատ նուազեր էր կանուխէն հաստատուած Դոմինիկեանց ազդեցութիւնը, և որոնց միացողներն էին Երնջակի Ունիթորները։ Սակայն պէտք է յոյժ վերապահութեամբ ընդունիլ Զամչեանի այս մասին տուած տեղեկութիւնները, որ տատանող տեսած կեղակարծ ակնարկներն ալ իբրեւ անստելի աղբիւր կ'ընդունի, իսկ ժամանակակից և կենակից անձերու գրուածներէն քաղուելիք տեղեկութիւնները կ'անտեսէ։ Ըստ Զամչեանի, Յիսուսեան արեղաներ ոչ միայն զօրն զօրէ և

ՆԱՀԱՊԵՏ
ԵՒ ՊԱՊՈՒԹԻՒՆ

ընդունելութեան մեծ Նահապետէն, այլ և Նահապետի մեծ միշտ պատճառեցին, իրենց տեղեկութիւններով և ծանուցանելով՝ թէ Արեւմուտքի մէջ լուր տարածողներ եղած ըլլան, թէ Հայք ի քոյ կոչեալ էցեն ի սէրս և ի հաղորդութենէ առաքելական աթոռոյն Հռոմայ, իբր թէ առաջուց Հայոց հայրապետութիւնը Հռոմի ձեռքին տակ նուաճուած ըլլար։ Կը պատմին ևս թէ այդ միջադէպը Հայերէն հեռացնելու համար Նահապետ 1695 սեպտեմբեր 5'ին, թուղթ սիրոյ և յորդորութեան յղած ըլլայ Իննովկենտիոս ԺԲ պապին (ՁԱՄ. Գ. 724), մինչ այս թուականին Նահապետ կաթողիկոսութենէ զրկուած և աթոռէն հեռացած էր։ Այս նամակին պատճէնը և թարգմանութիւնը կը գտնենք ուրիշի մօտ (ԱՁԱ. 130), բայց աբեղեան չափազանցութեանց և փոխաբերութեանց հեղեղին մէջ, հաղորդութեան իմաստ չենք գտներ, և գործին բուն իսկութիւնը կը տեսնենք այն հատուածին մէջ, ուր պապէն նիւթական նպաստ և քաղաքական օգնութիւն կը սպասէ Նահապետ, ինչպէս հիւանդներ առողջութիւն, գերիներ ազատութիւն, բանտարկեալներ փրկութիւն, և ինչպէս մանկունք մօրերնուն ստինքներէն կաթ կը փնտռեն (ԱՁԱ. 131)։ Միշտ նոյն յանգերգն ու նոյն նպատակն է, պապութեան ձեռքով Եւրոպայէն քաղաքական հովանաւորութիւն և նիւթական նպաստ ստանալու ակնկալութիւն, և այդ յաջողցնելու համար չոզոքորթ մարդահաճութիւն։ Տեսանք արդէն, թէ այդ գաղափարը սկսած էր զօրանալ Արեւելքի մէջ, և օրինաւոր և տանելի համաձայնութեան մըն ալ սկզբունքը ընդունուած էր (§ 1790), և ասկէ անդին չէր անցներ Նահապետի ալ դիտումը։ Կաթողիկոս մըն ալ կրնար հրապուրուիլ լատին եկեղեցականութեան արտաքնայարդար բարեկարգութիւնէն, կրնար ալ փափաքիլ անոր նմանութիւնը իւր եկեղեցւոյն մէջ քաջալերել, բայց ոչ իւր ուղղափառութենէն շեղիլ, և ոչ իւր եկեղեցւոյն ինքնութիւնը զոհել։ Լատին քարոզիչներ նամակի մը գրութիւնը բաւական կը ցուցնէին, և կաթողիկոսը կը յորդորուէր իւր անձնական նախաձեռնութեամբ այդպիսի նամակ մը անոնց յանձնել, որով

մարդորսակ գործիչներ իրենց պետերուն առջեւ արգիւնք և արժանիք կը շահէին, այլ ազգային շրջանակի մէջ անոնց հետքն անգամ չէր երեւար։ Զաքարիա Քանաքեռցին որ Նահապետի հետ ապրած է, և զոր՝ ոչ այժմ է՝ բացատրութեամբը կը հաւաստէ (ՁԱՔ. Բ. 107), որ Նահապետի թերի կողմերն ալ գրելէ չքաշուիր, երբեք տեղեկութիւն չունի և չտար Նահապետի համէջականութեան միտելուն կամ պապին նամակ գրելուն վրայ, ինչ որ կը ցուցնէ թէ Նահապետի նամակը, զոր Հռոմ կը պահէ եղեր (ԱՋԱ. 129), Նահապետի անպաշտօն և անձնական և գաղտնի մէկ գործն է, զոր իբր փորձ կրցած է յանձնել Լատին աբեղաներուն, այլ որ բնաւ նշանակութիւն չկրնար ունենալ Հայոց եկեղեցւոյն և Հայ հայրապետութեան տեսակէտէն։

**ՆԱՀԱՊԵՏԷ ՏԺԳՈՀՆԵՐ**

1833. Մայրաթոռի մէջ, ստոյգ է, որ Նահապետի դէմ տժգոհութիւններ կը ջանային, և անոր գործերուն դէմ բողոքներ կը զօրանային, բայց ոչ թէ համէջականութեան հետեւելէն գրգռուած, իբր թէ Նահապետ կամի ի լատին դարձուցանել զազգն (ՁԱՄ. Գ. 725)։ Բուն չարժառիթը եղած է, զի կարի սաստիկ էր ի վերայ յանցաւորաց, ինչպէս կը գրէ Քանաքեռցին (ՁԱՔ. Բ. 136), կամ զի սաստկութեամբ վարէր զգործ կաթողիկոսութեանն, ինչպէս կը կրկնէ Ջուղայեցին (ԽԱՁ. 151)։ Եթէ ոք [illegible] ինչ գործէր, զնա կոչեալ հրապարակաւ կոծ կոխէր, և գանալից առնէր, և գաւազանէր մարմնաւոր իշխանութեամբ, հարէր զմօրուսն և գանգուրսն, և արկանէր ի բանդ և շղթայէր, և այսպէս ահարկութեամբ կայր ի վերայ ամենայն եկեղեցականաց և քահանայից (ՁԱՔ. Բ. 136)։ Պէտք չէ նաեւ մոռցրութենէ վրիպեցնել, որ երբ այդ խստութիւններ անհատական կամքով կը գործուէին, անոնց կը խառնուէին նաեւ անիրաւ գործեր, մասնաւորներու նախանձէն և քսութենէն գրգռուելով, և կամ վայրկենական կիրքերէ յուզուելով։ Նահապետի այդ ընթացքէն վրդովեցան գլխաւորապէս Էջմիածնի միաբանները, նաեւ ամենք ի սեղանագլխոց ի Մերսամս յաշխարհէ, և գրեալ մեքենայեցան Նահապետի դէմ, որպէսզի զայն գահընկէց ընեն, և այդ խորհուրդին գլուխ կանգնեցան Նախիջեւանի և Գողթան եպիսկոպոսները, որոնց անունները՝ չեն յիշուած (ՁԱՔ. Բ. 136)։ Ուրիշ պարագայ մըն ալ պէտք է դիտել այդ հակառակութեան մէջ։ Մայրաթոռը Պարսկաստանի մէջ էր, հետեւաբար իշխանութիւնը այն կողմի եկեղեցականութեան ձեռքը կը մնար, որուն գլուխը գտնուէին Էջմիածնի տեղացի և Նոր-Ջուղացի միաբանները, կամ որ նոյն է Ջուղայի երեւելիները առհասարակ համրութիւնը, զի Նոր-Ջուղան էր բոլոր պարսկահպատակ Հայութեան կեդրոնը։ Հետեւաբար այդ խումբին ախորժելի պիտի չերեւար տաճկահպատակ Հայութենէն եկած Եդեսացի և Նահապետի իրենց վրայ իշխելը, կամ անոնց տեսութեամբ՝ իրենց վրայ բռնանալը, և պիտի ջանային նորէն իրենց դարձնել Մայրաթոռոյ կառավարութիւնն ու հեղինակութիւնը։ Այդ տեսութիւնը կը քաղուի Քանաքեռցիին խօսքերէն ալ, որ ինքն ալ շատ համակիր չերեւիր Նահապետին, և կը գրէ թէ կաթողիկոսները, իմա Եղիազար և Նահապետ, զոր ինչ յիւրեանց ախորժէին վարեալ էին, զնոյն և սոքա առնէին, և թէ կարգ և կանոն առաջին կաթողիկոսացն քայքայեցաւ ի սոցա աթոռոյն. որով յայտնապէս Ջուղայեցի Յակոբին, և անոր նախորդներուն կ'ակնարկէ։ Կը յիշուի նաեւ թէ ամենայն առաջնորդք ըստ կամաց իւրեանց առնէին, և կաթողիկոսն ոչինչ գոյն լինէր, (ՁԱՔ. Բ. 107), ինչ որ կը ցուցնէ թէ կաթողիկոսին և թեմական կամ վանական առաջնորդներուն մէջ համաձայնութիւնը վերջացած էր. և այս ալ նշան մըն է, որ տաճկահայ կաթողիկոսներ, պարսկահայ եպիսկոպոսներուն և վարդապետներուն աչքին ախորժելի չէին։ Կրնայ ըլլալ որ Նահապետի Լատիններուն հետ կատարած գաղտնի յարաբերութիւններն ու նամակագրութիւններն ալ մէջտեղ ելնելով, բորբոքուած հակառակութեան առիթ՝ իբրեւ նոր զէնք մը գործածուած ըլլան, թէպէտ միաբանները այսպիսի կասկած ունեցած չեն երեւար։ Բայց այս պարագան, եթէ իբր իրական ընդունինք ալ, մեր պնդածը կը հաստատէ, թէ Հայ եկեղեցւոյ գործ չէր Նահապետի նամակը, և այս երեւէն իրեն դէմ եղած ամբաստանութիւնները կ'ապացուցանեն, թէ Հայ եկե-

զեցին և եկեղեցականութիւնք մաս չունէր կաթողիկոսին անհատական և գաղտնի ձեռնարկներուն մէջ:

**1834**. Հակառակութեան գլուխ կանգնող Նախիջեւանի և Գողթան եպիսկոպոսներ (§ 1833), պէտք եղած ամբաստանագիրներ կը պատրաստեն Նահապետի դէմ, և իրենց համամիտներուն ստորագրութիւններով կը զօրացնեն, և գիրերը Ջուղայեցւոց կը ղրկեն, որպէսզի իրենց հետ միաբանին Նահապետը տապալելու և անոր տեղը նստեցնելու Ստեփանոս Ջուղայեցին, Նոր-Ջուղայի Ամենափրկիչ վանքին առաջնորդը և Պարսկաստանի Հայոց արքեպիսկոպոսը, նոյն ինքն որ ուրացեալ Յոհան աբեղայի ձեռքով բանտարկութեան և չարչարանքի և տուգանքի ենթարկուած էր (§ 1822): Գիրերը Ջուղայ տանելու համար կ'ընտրեն Մատթէոս Կարնեցի վարդապետը, Բաբերդեն մականուանեալ, որպէս զի բերանացի ալ աշխատի Ստեփանոսը համոզել պաշտօնը ստանձնելու, և Ջուղայեցիները յորդորել պատշաճ դիւրութիւններն ու միջոցներն ընծայելու: Նամակներն ու պատուիրակը իրենց նպատակին կը հասնին, Ստեփանոս ալ կը շարժուի, և [illegible], և [illegible] զօրացեալ, վերջապէս ձեռք կը ձգէ [illegible], որ է արքունական հրովարտակը, և մինչեւ որ ինքն. ուղեւորութեան պատրաստութիւնները կ'ընէ, և պէտք եղած ոյժերն ու միջոցները կարգադրէ, իր առջեւէն կը ղրկէ Աղեքսանդր Ջուղայեցի վարդապետը (ԶԱՔ.Բ. 136), Դաւիթ Ջուղայեցիի յառաջադէմ աշակերտներէն (§ 1821), որպէսզի իր հասնելէն առաջ Նահապետը վարէ, և Տաթեւի վանքը փակէ, և ինքն ալ իբր տեղակալ Մայրաթոռոյ կառավարութիւնը ստանձնէ: Որչափ ալ Ստեփանոս մեծ յարգ ու վարկ կը վայելէր Պարսկահայ հասարակութեան առջեւ, և [illegible] (ԶԱՔ.Բ. 136) և [illegible] (ԽԱՉ. 152) և [illegible] (ԽԱՉ. 153) պատուանուններով կը յիշուի, բայց և [illegible] մեղադրանքն ալ չեն խնայեր իր գովաբաններն իսկ, և միայն [illegible], արդարացումը կը գրեն իբր պաշտպանութիւն (ԶԱՔ.Բ. 136): Նահապետ զգաց որ տեղւոյն վրայ պիտի չկարենայ դէմ դնել, քանի որ նոյն իսկ Մայրաթոռոյ միաբանութիւնը իրեն հակառակ էր, ուստի փութաց քաշուիլ դէպի Տաթեւ, բայց [illegible], այլ ուղիղ գնաց Թավրէզ՝ ուր էր Հիւսէյին շահը, և չիտակ ապաւինեցաւ [illegible] կոչուած տեղը, որ կը ծառայէր իբրեւ քաղաք ապաստանի, և [illegible]: Նահապետ, որ պաշտօնանկ կ'ըլլար, իրաւամբ կրնար վախնալ որ իբր յանցաւոր պատժապարտութեան չհանդիպի: Ստեփանոս պետական հրովարտակով, Փարզալի խան կուսակալին հետ եկաւ Երեւան, և անկէ Էջմիածին և [illegible], և տիրացաւ աթոռին, այլ շատ չկրցաւ վայելել ձեռք անցուցած իշխանութիւնը (ԶԱՔ.Բ. 137), որուն հազիւ թէ [illegible] տեւողութիւն կը տրուի (ՉԱՄ. Գ. 725): Ստեփանոսի կաթողիկոսութիւնը 1695'ին կատարուած եղելութիւն է, վերջն ալ 1696'ին:

**ՍՏԵՓԱՆՈՍ ՋՈՒՂԱՅԵՑԻ**

**1835**. Նահապետի ալ կուսակիցներ չէին պակսեր, և ինքն ալ անշուշտ պաշտպաններ ճարելու կերպերն ու միջոցները գիտէր. իր [illegible] ալ գործի ձեռնարկեցին, բայց ամենէն աւելի իրեն նպաստաւոր և օգտակար եղաւ Աւետիս Ջուղայեցի գիւղաւագը, զոր անգամ մը յիշեցինք (§ 1822): Աւետիս [illegible] Հիւսէյինի յակամայս կրօնափոխ էր եղած, և խալամութիւն ընդունած Մահմատ Հաւէն կամ Մէհէմմէտ Հիւսէյին անուանով: Եւ ոչ այսչափ միայն՝ այլ և [illegible], այսինքն է շահ Հիւսէյինի կանանոցին նուիրեց (ԽԱՉ. 152), և այս կերպով [illegible], և շահ Հիւսէյին դիւրամատոյց էր անոր ամէն խնդիրներուն: Նախկին գիւղաւագ Աւետիս, սրտէն ուրացեալ մը չըլլալով, Հայերու վերաբերեալ խնդիրներով զբաղելէ և պատշաճ օգնութիւններն ալ ընելէ չէր քաշուեր, և այդ պարագային ալ փութաց Նահապետին օգնել, որուն [illegible] էր: Գուցէ և Ստեփանոսէ ցաւելու

**ՆԱՀԱՊԵՏԻ ՎԵՐԱԴԱՐՁԸ**

առիթ ունեցած էր, անոր առաջնորդութեան ատենէն։ Աւետիս պաշտպան հանդիսացաւ Նահապետին, որուն գահընկեցութիւնը խմբակի մը չարակամութեան հետեւանք էր, և պարզապէս ծախել զթողամ գանձս գլուխ եկած մի գործ էր։ Տաճ Հիւսէյինի հետ ունեցած համարձակութեամբը հաղորդեց անոր Ստեփանոսի ստացած հրովարտակին ապօրինութիւնը, որ հակառակ էր Հայոց օրէնքին, որ կաթողիկոս մը չմեռած կամ չհրաժարած ուրիշի մը նստիլը չներեր, և եղածն ալ ձեռք ձգուած էր սուտ կաշառքներով պալատականներու մէջ։ Անշուշտ շահ Հիւսէյինի վրայ տպաւորութիւն գործող ուրիշ ամբաստանութիւններ ալ աւելցուց Աւետիս-Մէհէմմէտը, որ թագաւորը սաստիկ զայրանալով հրամայեց Ստեփանոսէ հազար թուման տուգանք գանձել, և զինքն ալ իր համախոհներուն հետ բանտարկել, և հրամանին գործադրութիւնը յանձնուեցաւ Երեւանի կուսակալ Ֆարզալիի, որ Ստեփանոսը նստեցուցած էր։ Ֆարզալի դժուարութիւն չունեցաւ հրամանը գործադրել, տուգանքը գանձել, և Ստեփանոսը բանտարկել իր երեք գլխաւոր համախոհներով, որոնք էին Պետրոս Վայոցձորի, Գրիգոր Մուղնու և Յովհաննէս Ծաղկունյոց առաջնորդները, մինչ Նահապետ յաղթական յաջողութեամբ իր աթոռը կը դառնար, և միաբանութիւնն ալ կը յաէր (ԶԱՔ. Բ. 137), զի կ'երեւի թէ Ստեփանոս ալ զիրենք չգոհացուց, երբոր տեսան որ ոչ խաղաղութեամբ վարէ նա զեկեղեցին իւր։ Միայն թէ չարդարանար կարծիքը, թէ միաբանները մերժեցին զնա յաթոռոյ, որպէս զխռովարար ու (ՋԱՄ. Գ. 725), զի կարի յայտնի են Քանաքեռցիին և Ջուղայեցիին ցուցած պատճառները։ Եղելութիւնը այս ձեւին թափել ուղղներուն գիտումն է, Նահապետը իբրեւ համէջականութեան մօտ և միաբաններուն սիրելի, իսկ Ստեփանոսը իբրեւ ոչ համէջադամն ու միաբաններէ մերժուած ցուցընելով, Հայ եկեղեցին իբր կաթոլիկ ներկայել։ Սակայն պատմական ստոյգ հանգամանքներ իրենց գիտումին չեն ծառայեր։ Ընդհակառակն ժամանակակիցներ Նահապետը կը մեղադրեն իբրեւ խստաբարոյ, և Ստեփանոսը հակաթոռութենէն ետքն ալ երանելի այր Աստուծոյ կը ճանչնան, և մահուանէ ետքը յիշատակն օրհնութեամբ եղիցի կը գրեն (ԽԱՉ. 153)։

**1838.** Ստեփանոսի հետ բանտարկուած երեք վարդապետներուն դժուար չեղաւ

**ՍՏԵՓԱՆՈՍԻ ՄԱՀԸ**

շուտով ազատիլ, վասնզի ի բանտէ ընդարձակ էին (ԶԱՔ. Բ. 137), և եղան եւս յոյժ տառապանս և արժանեցան (ԽԱՉ. 153)։ Իսկ Ստեփանոսի հնար չեղաւ ազատիլ, մանաւանդ թէ աւելի ծանրացաւ իր վիճակը, և հանեալ եւս ի բերդէ և յընդարձակ բանտէ, ուրէին ի մեծին և մահահոտ զընդան (ԽԱՉ. 153), տուրքերը ծունկերէն ծանրագոյն կոճղի զարկին, թիկունքին վրայ կարծրանիւթ քարեր կապեցին, և այնպէս անշարժացեալ թողուցին, մինչեւ որ ի ղող-բոտնենէ հարոյն, յաճմանէ հերոյն, և ի քաղցանալոյ որդանց կերակրեալ մեռան անդէն (ԶԱՔ. Բ. 138)։ Եղերական է ապաքէն Ստեփանոսի վախճանը, որ ոչ սորին զգացմանց տէր անձ մըն էր, և ոչ ալ հասարակ եկեղեցական մը, այլ մի յընտրելոց աշակերտաց Դաւիթ Ջուղայեցիի, և արժանաւոր յաջորդ Խաչատուր Կեսարացիին և Սիմէոն ու Դաւիթ Ջուղայեցիներուն, և գլուխ Ամենափրկչի վանքին ընտիր միաբանութեան։ Այդ դժբախտաբար յախուռն գործի մը մէջ նետուեցաւ, առանց եկեղեցական և կանոնական օրինաւորութեանց կաթողիկոս մը գահընկէց ընելու և անոր տեղը անցնելու յաւակնութեամբ, լոկ մասնաւոր խումբի մը գրգռութեամբ։ Պէտք է ըսել որ երկայնամիտ համբերութեամբ տարած պիտի ըլլայ Ստեփանոս գլուխը եկած բազմաչարչար արկածները, որոնք անհամեմատ ծանրագոյն եղան, քան իր անխորհուրդ ձեռնարկները։ Այդ բանին կը վկայէ պատմիչն ալ, Եւ այսպէս եղեւ վախճան և մահ երանելւոյ առն Աստուծոյ տեառն Ստեփաննոսի վարդապետի և կաթողիկոսի, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի, և սով կը կնքէ անոր պատմութիւնը (ԽԱՉ. 153)։ Ձենք գիտեր ում վերագրել Ստեփանոսի վրայ գործածուած խուժդուժ խստութեանց պատասխանատուութիւնը, արդեօք թագաւորին բարկութեա՞ն, թէ կաթողիկոսին վրէժխնդրութեա՞ն։ Թագաւորին համար շատ նշանակութիւն պիտի չունենար եկե-

ղեցական կանոններու պահանջը, իսկ կաթողիկոսին վրայ չէինք սիրեր ծանրայնել այդպիսի վայրագ վրէժխնդրութիւն մը, որչափ ալ ծանօթ ըլլան Նահապետին ընթացքը, որ անօրէնն [illegible] կոյր (ՋԱԲ. Բ. 136) և [illegible] (ՋԱԲ. Բ. 107)։ Ստեփանոսի հակաթոռութեան եղելութիւնը յառաջ բերինք, առանց ժամանակագրական ճշդութեանց, վասնզի որոշակի գրուած չէր՝ նոյնիսկ բանտարկութեան տեւողութիւնը։ Մահուան թուականը պէտք է ընդունիլ 1698 յունուար 4'ին (ՋԱԲ. Բ. 138), կամ աւելի ճիշդ 1698 յունուար 5'ին, չորեքշաբթի օր, Աստուածայայտնութեան ճրագալոյցին (ԱՐԱ. 439), թէպէտ ուրիշ տեղ 1696 փետրուար 16 գրուած ըլլայ (ԽԱՋ. 153), զոր չփոխուած կը կարծենք իր գահընկէցութեան թուականին հետ, երբ զի 1695'ին կը տրուի իր գահակալութիւնը (ՋԱՄ. 27), և պաշտօնավարութեան տեւողութիւնը տասն ամիս բսուած ըլլալով (ՋԱՄ. Գ. 725), 1695 ապրիլին տեղի ունեցած կ'ըլլայ Ստեփանոսի գահակալութիւնը։ Ըստ այսմ կը հաստատուի թէ Նահապետ 1695 սեպտեմբեր 5'ին չէր կրնար երբեւ աթոռի վրայ կաթողիկոս պապին նամակ գրել (§ 1832)։ Իսկ Ստեփանոսի գահընկէցութիւնը 1696 փետրուարին տեղի ունենալով երկու տարի տեւած կ'ըլլայ անոր խստամբեր բանտարկութիւնը։ Մարմինը իր իսկ կամքով տարին Խորվիրապի վանքը (ՋԱԲ. Բ. 138), և անդ հանգուցեալ [illegible] (ԱՐԱ. 439)։ Այդ մասին մեծ հոգ ունեցած է Նահապետ, խղճալի կաթողիկոսին յիշատակը պատուելու համար, և մեծամեծ ծախքերու սախպուած է, բանտարկեալ դատապարտեալի մը մարմինը զընտանէն առնելով փառաւոր յուղարկաւորութիւն ընելու համար (ՋԱՄ. Բ. 39), ինչ որ կրնայ նպաստել Նահապետը վայրագ վրէժխնդրութենէ ազատ սեպելու կարծիքին։

**1837.** Այդ միջոցներուն էր որ Հայաստանի խորերը կը թափառէր Մխիթար Սեբաստացի սարկաւագը, որուն ապագայ գործունէութիւնը կը պահանջէ կանուխէն պատմել անոր նախընթացը։

**ՄԽԻԹԱՐ ՍԵԲԱՍՏԱՑԻ**

Մխիթար Պետրոսեան, և կամ աւազանի նախկին անուամբ Մանուկ, 1676 փետրուար 7'ին ծնած Սեբաստիա քաղաքը, տեղական քահանաներու և վարդապետներու մօտ սկսած էր առնել առաջին ուսումները, մինչեւ որ Ս. Նշանի վանքին միաբան մտնելով, 1685'ին դպիր և 1691'ին սարկաւագ կը ձեռնադրուի՝ առաջնորդ Անանիա եպիսկոպոսէն (ՄԽԻ. 57)։ Մայրաթոռի մէջ ընդարձակագոյն ապարէզ գտնելու փափաքը, զինքն կը յորդորէ փութաւոր մտնել Էջմիածինի նուիրակ Միքայէլ եպիսկոպոսի մօտ, որուն հետ Սեբաստիայէ կը մեկնի 1691 դեկտեմբերին, և ձմեռնային ուղեւորութեամբ ու Կարին հանդիպելով Էջմիածին կը հասնի 1692 փետրուարին, Նահապետի կաթողիկոսութեան՝ սկիզբը։ Կարնոյ մէջ է, որ Մխիթար կը գտնէ [illegible] լատիներէնէ թարգմանուած գիրք մը, 1687'ին Վենետիկ տպուած և բոլորովին հռոմէական ուղղութեամբ գիրք մը, զոր Միքայէլ եպիսկոպոս նախահօտ զգուշութեամբ պատանի սարկաւագին ձեռքէն կ'առնէ։ Կարին ալ մուտ գտած էին Լատին քարոզիչներ ու խիղճեր վրդովելու ճիգեր կը թափէին։ Ստեփանոս Սեբաստացի ուխտաւոր մը, Մխիթարի ծանօթ, Էջմիածին կը հանդիպի նոյն օրեր, և Մխիթար կը հրապուրուի անոր հետ Հայաստանի սրբավայրերը տեսնել, և իր եպիսկոպոսէն զատուելով հայրենակիցին հետ Էջմիածինէ կը մեկնի, երկու ամիս միայն այնտեղ մնալէ ետքը, և Խորվիրապի ուխտը կատարելով կ'անցնին Սեւան կղզիին վանքը։ Սեւանի եկեղեցւոյն մէջ տեղի ունեցած կ'ըսուի Մխիթարի տեսիլքը, որուն վկան հարկաւ ինքն միայն է, և որուն մէջ Աստուածածին Մխիթարի կը խօսի, Խնդրէ՛ Մխիթար ինչ որ կամիս, և Մխիթար կը պատասխանէ. Այն կամիմ, [illegible], ինչ որ դու կամիս. և Աստուածածին ալ կը խոստանայ. Թող լիցի [illegible], եղիցի (ՑՈԲ. 6)։ Մխիթարեանք այս տեսիլքին մէջ կ'ուզեն տեսնել իրենց միաբանութեան հիմնարկութիւնը, և անոր հռոմէական ուղղութիւնը։ Բայց պարագաներ շատ հեռու կը ցուցնեն այդ նպատակը 17 տարեկան սարկաւագին միտքէն, որ Էջմիածին եկած էր Մայրաթոռին մէջ բախտ

*գտնելու։ Նա առաւել չենք կարծեր որ ըսեն, թէ Սեւանի Աստուածածինը, որ այնչափ դարերէ ի վեր հայադաւան եկեղեցւոյն մէջ էր, և Սեւանի հայադաւան միաբանութեան հովանաւորն էր, նա ալ միտքը փոխած ու հռոմէադաւան դարձած ըլլայ։ Մխիթար վերը յիշուած Սեբաստացի ուղեւորին հետ նորէն Սեբաստիա երթալու համար Սեւանէ Կարին կու գայ, բայց Բասէնի վանքին առաջնորդ Մելքիսեդ եպիսկոպոս, զինքն վար կը դնէ տղայոց ուսուցչութեան համար, մինչ Կարնոյ Աւետիք եպիսկոպոսն ալ ամէն հնարք ի գործ կը դնէր զինքն որսալու, կը գրէ Մխիթարեանց պատմիչը* (Մխի. 77), *այսինքն Կարինի մէջ պահելու, ինչ որ Աւետիքի անձնաւորութիւնը գիտնալով, Մխիթարի վրայ հաւատարիմ հայադաւանութիւն տեսնելուն վկայութիւն կրնայ համարուիլ։*

**1838**. *Կարնոյ առաջնորդ Աւետիք Եւդոկիացին, զոր առաջին անգամ յիշելու առիթ կ'ունենանք, հռչակաւոր է պատմութեան մէջ, և հարկ կը սեպենք այժմէն անոր նախընթացը բացատրել։*

ԱՒԵՏԻՔ ԵՒԴՈԿԻԱՑԻ

*Բնիկ Եւդոկիացի,* 1657 *ապրիլ* 7'*ին ծնած, մինչեւ* 15 *տարեկան ըլլալը մեծ հօրը՝ հարիւրամեայ Սարգիս քահանային, և մկրտող Պետրոս քահանային մօտ քիչ շատ ուսման պարապած ըլլալով մէկտեղ, հօրը մօտ ջուլհակ եղած և շղոճ գործէն սորված, և նշանուած ալ էր։ Յակոբ Պէլէնկցի եպիսկոպոսին նուիրակութեան առթիւ, կուսակրօն եկեղեցականութեան փափաքը կը զարթնու, և նոյն վարդապետին աշակերտութեան կը մտնէ, և* 3 *տարի ետքը Փայաս կոչուած աւանին, սարկաւագ կը ձեռնադրուի* 1675'*ին։ Միշտ Պէլէնկցիին նուիրակական շրջագայութեանց հետեւելով,* 1689'*ին Սեբաստիա կը գտնուի Յակոբ կաթողիկոսի անկէ անցած ատեն* (§ 1790)*։ Պէլէնկցին կաթողիկոսին հետ Կ-Պոլիս կ'երթայ, և Աւետիք իր վարդապետէն բաժնուելով, Երուսաղիմացի Սահակ եպիսկոպոսին հետ Էջմիածին կու գայ, և անոր հետ ետ դառնալով՝ Երզնկայի Կապուտ կամ Կայլխոսի Ս. Յակոբ վանքին մէջ աբեղայ և վարդապետ կը ձեռնադրուի, և նոյն վանքին առաջնորդ կը նշանակուի։ Ասկէ կը ծագի Աւետիքի՝ Երզնկացի կոչուիլը* (74 ԱՐԲ. 74)*։ Ոչ միայն այս վանքը, այլեւ Տիրանաշէն Ս. Նշանի, կամ Տիրաշէն Ս. Ներսէսի վանքն ալ կը նորոգէ, և Երզնկայի Մարիամ Աստուածածին յիշեալ եկեղեցին ալ նորոգելու կը ձեռնարկէ* (74 ԱՐԲ. 75)*։ Յանկարծ Ենիչէրիներու ըմբոստութիւնը կը բորբոքի, որոնք յոյժ խռովող էին, քրիստոնէից շրջոյն կամ պղծէին, և տաղակութիւն տանէին, և Աւետիքն ալ երկոտեղեայ խանչարով խոցոտեցին, որ պառկեցաւ 40 օր ի մահճի մնայ։ Առողջանալէն ետքը Կ-Պոլիս կու գայ, և պատշաճ հրամանները հանել տալով, և զինուորական զօրք ալ բերել տալով ըմբոստութիւնը զսպել կու տայ։ Ասոր վրայ հակառակորդները կը գրգռուին և զինքը կ'ամբաստանեն իբրեւ անհրաման եկեղեցի շինող, և Կարնոյ կուսակալին հրամանով կը բանտարկուի և կոճղի կը զարնուի, և երեք օր անսուաղ կը թողուի Կարնոյ մէջ։ Անկէ ետքը ատեան հանուելով իր արդարացման պէտք եղած պաշտօնագիրները կը ներկայէ, և Ֆէյզուլլահ դատաւորին վճռով ազատ կ'արձակուի, և Երզնկա կը դառնայ եկեղեցւոյն շինութիւնը շարունակելու։ Այս միջոցին Երզնկայի մէջ Սահակ Կիւմիւշխանացի վարդապետէն ծայրագոյն գաւազան կ'ընդունի, և անկէ Էջմիածին անցնելով Եղիազար կաթողիկոսէ կը ձեռնադրուի 1691'ին 34 տարեկան եղած ատեն։ Երբոր Երզնկա կը դառնայ ուղղակի իր կեանքին կը սպառնան, որով հազիւ տուն մը կը պահուըտի շարունակ վախի մէջ։ Յանկարծ դատաւորը՝ որ իր գլխաւոր հակառակորդն էր, ընտանեօք կը հիւանդանայ, և զինքն աստուածային պատուհասի ենթարկուած տեսնելով, բացարձակ հրաման կու տայ եկեղեցին շինել և դրամական և նիւթական նպաստ ալ կը ղրկէ։ Սակայն Ենիչէրիներու ըմբոստութիւնը կը նորոգուի, և Աւետիք Էջմիածին կ'ապաւինի, ուր 4 ամիս միայն մնալով Նահապետ կաթողիկոսի հրամանով Կարնոյ առաջնորդութեան կը ղրկուի 1691'ին վերջերը* (74 ԱՐԲ. 115)*։ Այդ միջոցին է ահա որ Մխիթար Բասէնի վանքը կը հաստատուէր, և զոր Աւետիք կ'ուզէ*

եղեր իրեն սրտայ։ Եւ որովհետեւ Սեւերիք կաթողիկէ Հայոց հաւաքումն նախաձեռնարկը, և սկիզբէն իվեր նախանձայոյզ հայադաւան մը ցուցուած է (Մխի. 61), պէտք է ընդունին իրենները՝ թէ Մխիթարի վրայ կաթոլիկութեան մտուած չէր տեսնուեր տակաւին։

**ՄԽԻԹԱՐԻ ՊՏՈՅՏՆԵՐԸ**

**1839**. Մխիթար սարկաւագը տարի մը միայն Բաղէշի վանքին մէջ մնալէ յետոյ, 1693'ին Սեբաստիա Ս. Նշանի վանքը կը դառնայ, և կը մնայ իբրեւ միաբան, մինչեւ որ իր պաշտպան Անանիա եպիսկոպոսին տեղ կ'անցնի Սահակ Կեսարացի վարդապետ։ Մխիթար անկէ աժգոհելով, նորէն ուրիշ տեղ բախտ փնտռելու կ'ելլայ, և Յովհան Եւդոկիացի վարդապետին հետ 1695 մարտին կը մեկնի Երուսաղէմ Հայոց վանքը երթալու։ Բայց Բերիոյ մէջ երկուքն ալ կը սկսին շփուիլ Լատին աբեղաներու հետ, որոնցմէ Անտոն Պոլոնէ Յիսուսեան միաբանութենէն, գիրենք կը գրաւէ, և Հռոմ յղելու և գիտնական դարձնելու խոստումներով երկուքն ալ համէականութեան կը միացնէ (Մխի. 95)։ Գոնէ այս կը ցուցուի Մխիթարի համէականութեան յարելուն շարժառիթն ու սկզբնաւորութիւնը, թէպէտ տակաւին զայն հայադաւան եկեղեցւոյ ծառայութեան մէջ կը գտնենք, իբրեւ լատինասէր Հայ մը, և ոչ երբեք իր եկեղեցիէն բաժնուած կաթոլիկ մը։ Հռոմին անունէն և Եւրոպայի համբաւէն գրաւուած Մխիթար՝ Երուսաղէմը կը մոռնայ, և Բերիայէն կ'իջնէ Իսքէնտէրուն որ է հին Աղեքսանդրիա Իսոսի կամ Փոքր Աղեքսանդրիան, անկէ ալ Կիպրոս կ'անցնի, և Կիպրոսէ նաւ մտնելէն ետքն ալ՝ նորէն միտքը կը փոխէ, և դուրս կ'ելլէ և Կիպրոս կը դառնայ, և առաջին պատեհով Սելեւկիոյ նաւահանգիստը կ'անցնի, և Անտիոքի ու Բերիոյ ու Այնթապի ճամբով Սեբաստիա կը դառնայ 1695 նոյեմբերին, և Ս. Նշանի վանքին միաբանութիւնը կրկին կը շարունակէ։ Այնտեղ 1696'ին Զատիկէն ետքը, որ ապրիլ 12'ին հանդիպած էր, քահանայական ձեռնադրութիւն կ'ընդունի Կեսարացի Սահակ եպիսկոպոսէն։ Աստիճանը իրեն համարձակութիւն կու տայ լատինասէր կուսակցութեան կողմը բանելու, բայց հակառակութիւններ կը գրգռէ իր դէմ, կը պարտաւորուի խոյս տալ, և Եւդոկիա ու Ակն դեգերելէ ետքը, նորէն Սեբաստիա կը դառնայ, լսելով որ մեռած է Ծառուկ վարդապետը, զոր իբր անձնական հակառակորդ նկատած էր։ Բայց Սեբաստիան բաւական չէր իր ձգտումներուն գոհացում տալ, և աչքը կը սեւեռէ մայրաքաղաքին և պատրիարքութեան կեդրոնին, հոն ընդարձակելու համար իր ասպարէզը, և 1698'ին ապրիլին Կ-Պոլիս կը մտնէ (Մխի. 117), տակաւին 22 տարեկան նորընծայ վարդապետ մը։

**ՇՓՈԹ ԱԿՆԱՐԿ**

**1840**. Այս միջոցին անցողակի յիշատակ մը կը գտնենք Սարգիս դպիրէ նշանակուած (ՍՐԳ.), թէ Ղափանէճի կաթողիկոսն Սերոյ, որ կոխեցաւ էին, թուականին ՌՃԽԵ = 1696 յունիս 5 շաբաթ օր, թէպէտ շաբաթ օրը յունիս 6'ին կ'իյնայ։ Այդ տարին Կիլիկիոյ կաթողիկոս գիտենք Մատթէոս Սարին (§ 1829), որուն Ղափանէճի մականունը տրուած չէ ուրիշ տեղ։ Թէպէտ նա իվերջոյ ուրացաւ, բայց 1707'ին, և ոչ 1696'ին։ Ըստ այսմ մեզի համար անլուծանելի կը մնայ խնդիրը, թէ արդեօք թուականներու շփոթութիւն մըն է՞, թէ ոչ տարբեր կաթողիկոս մըն է որ նեղը ինկած մէկ պահուն այդ վախճանը ունեցաւ։

**ԵՓՐԵՄ ՂԱՓԱՆՑԻ**

**1841**. Կոստանդնուպոլսոյ մէջ պատրիարքական աթոռի վրայ կը գտնուէր Եփրեմ Ղափանցին 1694'էն իվեր (§ 1829), հայադաւանութեան համարձակ պաշտպան մը, և լատինամիտներուն յայտնի հակառակորդ, սակայն այդ միջոցին պատմութիւնը անոր չվերագրեր խստութեան գործեր։ Հետեւաբար չարդարանար, վասն ստեղծ քերթողն (ԶԱՄ. Գ. 727), կամ իւրեն դաժան բնաւորութեան գործոց (Մխի. 118), պաշտօնանկ եղած ըլլալու բացատրութիւնը, քանի որ շատ յայտնի են պատրիարքութիւնը իրարու ձեռքէ խլելու տիրող մրցակցութիւնը, և պատրիարքներու շարունակ փոփոխութիւնը։ Անհիմն տրուած պիտի նկատ-

ուի նաև Ստեփանոս Ջուղայեցիէն իւր բանտարկութեան առեն նամակ գրուիլը Եփրեմին՝ Նահապետի հոմէջականութիւնը մեղադրելով, և այս պատճառով Եփրեմի Նահապետի դէմ գրգռուիլը, բայց դահընկէց ըլլալուն պատճառով բան մը ընել չկրնալը։ Վասնզի ոչ միայն շատ դժուար էր Ստեփանոսի իւր խիստ բանտարկութեան միջոցին Կ-Պոլիս նամակ հասցնել, այլ և Նահապետ, աթոռ վերադարձաւ 1696'ին, Եփրեմի դահընկեցութենէն երկու տարի առաջ (§ 1836)։ Նահապետի իշխանութիւնն ալ Օսմանեան կառավարութենէ ճանչցուեցաւ հրովարտակով, որ չէր կրնար կատարուիլ առանց Եփրեմի միջնորդութեան։ Ստոյգն այն է որ Եփրեմ ալ պիտի չկարենար երկար առեն դէմ դնել նոր մրցակիցներու, և պաշտօնանկ եղաւ Մխիթարի Կ-Պոլիս հասնելէն ամիս մը ետքը, 1698 մայիսի առաջին շաբաթ օրը, որ 6'ին ըսուած է, բայց 7'ին պիտի ուղղուի, և ոչ 8'ին (ՁԱՄ. Գ. 327)։ Յաջորդը Մելքիսեդեկ եպիսկոպոս, Սուղհի Շոյէր մականուանեալ, որ կը ցուցնէ թէ շոյէր կամ աշուղ մըն էր, և Սուլհի իւր կեղծանունն էր, ինչպէս սովորութիւն է ամէն աշուղներու կեղծ անուն մը ունենալ։ Պատրիարքութեան բարձրացող եպիսկոպոսի մը՝ երգաբանութեան հետեւիլը զարմանալի պէտք չէ երեւայ, վասնզի երգի ճիւղը ժամանակին բարձրագոյն գրականութիւնն էր, և կանուխէն ալ այդ ճիւղին մէջ յառաջացած տեսանք Յովհաննէս Թլկուրանցի (§ 1525) և Գրիգոր Աղթամարցի (§ 1556) կաթողիկոսները։ Մելքիսեդեկի օրով ալ կը շարունակուէին Կ-Պոլսոյ մէջ Հայու ու Փրէնկի անվերջ վէճերը, և եկեղեցականներէն ալ այս ու այն կողմի պաշտպաններ կը յայտնուէին համարձակ, բայց տակաւին խարականութիւններ զօրացած չէին, և նոյն իսկ հռոմէական դպրանոցի մէջ ուսում առնող աբեղաներ, իբրեւ Հայոց եկեղեցւոյ վարդապետներ պաշտօնավարութեան կը մանէին, ինչպէս Խաչատուր Կարնեցի կամ Խաչատուր Առաքելեան՝ Փրոփականտայի դպրանոցին աշակերտը, որ Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցին քարոզչութիւն կ'ընէր, և Մայր եկեղեցւոյ ընծ իսկ կը բարձրանար։

**ՄԽԻԹԱՐ Ի Կ-ՊՈԼԻՍ**

**1842.** Մխիթար Սեբաստացին ալ, որ Կ-Պոլիս հասնելուն, յայտնապէս Խաչատուրի կը յարէր և Հռոմ երթալու միտքը կը մշակէր, առանց դժուարութեան Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյն մէջ քարոզելու կ'արտօնուէր Մելքիսեդեկի պատրիարքէն։ Ղալաթիոյ դիրքէն կ'օգտուէր Մխիթար դիւրին չփումներ ունենալու Լատիններուն հետ, և իրեն զարգացման դուռ մը բանալ Սրբեւմտեայց մերձաւորութեամբ, ինչպէս զինքը կը քաջալերէին Խաչատուր Կարնեցին և Յովհաննէս Վերզոյ Ցիսուսեանց միաբանութենէն՝ Բերիայէ ծանօթ լատին աբեղայ մը։ Մխիթարի ներքին ոգին ճշդելու համար աւելորդ չէ դիտել, թէ նա խարականութիւնը հեռացընելու համար, խօղօղօբեան և եղիայօղօբեան ֆօրօղնէր կը խօսէր՝ Հայ ու Փրէնկ անուններով մաքառող կուսակցութեանց, որով նոյն իսկ Հայութիւն պաշտպանողներ՝ Ֆրնք թեղէ հետ գօրծ չունէնք կ'ըսէին Մխիթարին (ՅՈԲ. 17)։ Ասիկայ Մխիթարին միջասահման անտարբեր մը ըլլալը կը հաստատէ, և իրաւունք ունին որոնք իրեն կը պատշաճեցնեն Լամբրոնացիին առածը, թէ է ինչ Հայն օրդէօ գլօթէնոցէն, և Լօթէնոցէ օրդէօ գէնեցէնոցէն (Մխի. 119), որ ոչ թէ լատինացի կամ հռոմէադաւան եղած ըլլալը կը նշանակէ, այլ հարազատ հայադաւանութեամբ, հռոմէադաւանին և յունադաւանին ալ հանդէպ ազատական և թոյլատու համոզում, և համոզումին համաձայն ընթացք և վերաբերութիւն ունենալը։ Մխիթարի Կ-Պոլիս մնալը 5 ամիս միայն կը տեւէ (Մխի. 121), և 1698 սեպտեմբերին, նորէն բախտ փնտռելու փափաքով կը մեկնի Կ-Պոլսէ, ուր մտադրած ասպարէզը չէր գտած, և կը խորհի դառնալ Հայաստանի ներքին գաւառները, ուր կանուխէն տեսած էր շարժումի միտումներ և նոր ձեռնարկներու նշաններ։

**ԻՍՐԱՅԷԼ ՕՐԻ**

**1843.** Յակոբ Ջուղայեցի կաթողիկոսին հետ, 1679'ին վերջը Կ-Պոլիս եկող պատգամաւորութեան անդամակիցներէն մէկուն, փոխանակ Արցախ դառնալու, 1680'ին Եւրոպա անցնելով Գաղղիոյ մէջ զինուորական արուեւ-

տին հետեւած ըլլալը յիշած ենք, եւ այս մէկն էր Պռօշ իշխանին որդին Իսրայէլ Օրի (§ 1797)։ Իսրայէլ անսովոր անուն չէ Հայերու մէջ, բայց Օրի մականունը հայերէն չէնչեր, եւ հարկաւ Եւրոպայի մէջ զայն իւրացուցած է Իսրայէլ, ով գիտէ ինչ նշանակութեամբ։ Մեր կարծիքով դժուարին է ենթադրել թէ Ori, տառադարձութիւնն ըլլայ Roi գաղղիերէն բառին, որ [illegible] կը նշանակէ, եւ թէ ամբողջ Israel Ori անունը, il sera roi, [illegible] իմաստով գործածուած ըլլայ (ԼԷՕ. Բ. 265)։ Օրի 12 տարի ծառայեց Գաղղիական բանակին, եւ մինչեւ սպայի աստիճան բարձրացաւ, եւ Գաղղիացի գունդերու հետ պատերազմներու ալ մասնակցեցաւ, եւ եղաւ կատարելապէս Եւրոպացի մի անհատ, իր արեւելցի ծագումը եւ նկարագիրը անյայտացնելու չափ։ Յիշուած 12 տարիներուն վերջը՝ պատերազմի գերի իյնալ Անգղիացւոց ձեռքը, եւ առիթ ունեցաւ Անգղիան ալ ուսումնասիրել եւ Անգղիացւոց ընտելանալ։ Երբոր ազատութիւն ստացաւ, Գաղղիա չվերադարձաւ, այլ այս անգամ Գերմանիա անցաւ՝ Պալատինեայ կայսրընտիր իշխանութեան, ուր 1688'էն իվեր յաջորդութեան պատերազմ կը մղէր Փիլիպպոս-Գուլիէլմոս իշխանը, եւ վերջապէս ապստամբին իրաւունքը կ'ամրապնդէր Յովհան-Գուլիէլմոս իր որդին 1697'ին (Johan-Wilhelm)։ Անոր ծառայութեան մէջ կը գտնուէր Օրի, եւ զանազան քաղաքներու մէջ կառավարչութեան պաշտօն վարած էր (ԼԷՕ. Ա. 423), երբ օգտուելով Յովհան-Գուլիէլմոսի հետ ստացած մտերմութենէն, Օրի Գուլիէլմոսի ռազմիկ ձգտումները գրգռեց եւ Արեւելքի մէջ ընդարձակ գործի ասպարէզ, ու նոր թագաւորութեան ակնկալութիւն փայլեցուց անոր աչքին։ Յովհան-Գուլիէլմոս գրաւուեցաւ եւ գործին ձեռնարկելու ալ որոշում տուաւ, վստահանալով Լէոփոլտ Ա կայսեր օգնութեան, որ իր քենեկայն էր։ Օրի արդէն Գաղղիա եղած ատենէն համէջականութիւնը ընդունած էր, եւ լաւ գիտնալով թէ ինչպէս կրօնափոխութիւնը հիմնական պայման մըն էր եւրոպական արքունիքներուն առջեւ յաջողելու, եւ կրօնականներու ու պապութեան հովանաւորութիւնն ստանալու, համարձակեցաւ խոստանալ եւ վստահացնել՝ Հայ եկեղեցին համէջականութեան բերելու։ Պարագաներն ալ յաջող կ'երեւային նոր ձեռնարկին, վասնզի 16 տարիներէ իվեր պատերազմներ կը շարունակէին Եւրոպիոյ եւ Թուրքիոյ միջեւ, որոնք եթէ 1695 փետրուար 6'ին Մուսթաֆա Բ'ի՝ իր մօրեղբօր Ահմէտ Բ'ի յաջորդելէն ետքը, պահ մը Օսմանեանց յաջող կողմեր ունեցան, բայց վերջապէս 1697'ին Ծէնթայի ճակատամարտը Օսմանեանց աղետաբեր եղաւ, եւ Եւգինէոս Սավոյացւոյն (Eugenio di Savoia) տարած մեծ յաղթանակը, ստիպեց Օսմանցիները հաշտութեան հաւանիլ։ Այդ մասին բանակցութիւններ սկսած էին՝ Աւստրիոյ, Թուրքիոյ, Ռուսիոյ, Վենետիկի եւ Լեհաստանի լիազօրներու մէջ իբրեւ պատերազմիկներ, որոնց հետ էին Անգղիոյ եւ Հոլանտիոյ լիազօրներն ալ իբրեւ միջնորդներ (ԺՈՒ. 312)։ Այդ պարագաներուն մէջ էր որ Յովհան-Գուլիէլմոս մտածեց Օրին Լէոփոլտ կայսեր մօտ յղել պարտուպատշաճ գիրերով եւ հրահանգներով։ Օրի 1698 օգոստոս 2'ին Տիւսէլտօրֆ (Dusseldorf) քաղաքէն մեկնեցաւ դէպի Վիէննա՝ կայսեր ներկայանալու, որպէսզի հրահանգներ տրուին Քարլովից (Karlowitz) հաւաքուած լիազօրներուն։ Քարլովիցի դաշնագիրը 1699 յունուար 26'ին կնքուեցաւ՝ երկարատեւ բանակցութիւններէ ետքը, 25 ամեայ խաղաղութեան պայմանաժամով, բայց անոր մէջ Հայոց մասին ակնարկ չկար, վասնզի ծրագրեալ ձեռնարկը Պարսկական Հայաստանին համար էր, եւ ոչ Օսմանեան Հայաստանին համար։ Իսկ Օրի հարկաւ քաջալերական խօսքեր լսեց, որ Յովհան-Գուլիէլմոսէ Հայ ու Վրացի իշխաններուն ուղղուած գիրերով ուղեւորեցաւ Հայաստան։ Աւելորդ չսեպուի կրկնել, թէ Օրի Եւրոպացի ասպետի անունով կը ճանպորդէր, իր ինկութիւնը ծածկելով։

**ՆԱԶԱՐԵՍ ԵՒ ՕՐԻ**

**1844.** Օրի իր ուղեգիծը նախ Լեհաստանի եւ Ռուսաստանի վրայով սկսաւ, բայց ձմեռնային արգելքներու պատճառաւ փոխեց դէպի Մոլտավիա եւ Սեւ ծով, եւ հոն ալ դժուարութեանց բախելուն, Ադրիանուպոլիսի եւ Կոստանդ-

նուպոլիսի գիծը բռնելոյ։ Առաջին քաղաքին մէջ Գաղղիոյ դեսպանին հետ տեսակցեցաւ, իսկ մայրաքաղաքի մէջ մեծ եպարքոսը տեսաւ, արքունիքն ալ պատուեցաւ, միշտ յանծանօթս։ Մելքիսեդեկ պատրիարքին ալ ներկայացաւ (ԼԵՕ. Ա. 425), որուն պէտք չտեսաւ ծրագիրը յայտնել, յաջողութեան նշոյլ չտեսնելով մայրաքաղաքի յուզուած Հայութեան վրայ, և միայն Ասիական գաւառներով ճանապարհորդելու դիւրութիւններ առաւ ու մեկնեցաւ։ Ցամաքային ուղեւորութեան մէջ ոչ զինքն յայտնեց, և ոչ իւր նպատակին մասին խօսեցաւ, և շիտակ Երեւան հասաւ 1699 ապրիլ 4'ին, աւագ եւրեքշաբթի օր, իսկ եթէ նոր տոմարով հաշուենք, կը հանդիպի մարտ 25'ին, Մուսին ի վերայ յիշատակին։ Զարպաչ զննողականք հոգ ըրած պիտի չըլլայ ձմեռնային եղանակին ճանապորդել ներքին գաւառները։ Ամէնէն կարեւոր կէտը կար այստեղ իւր առաջ։ Եւրոպայի օգնութեան դիմելու և Եւրոպայի համաձայնական ձեւեր ալ գործածելու միտքը ընդգրկած էին հաւասարապէս Յակոբ և Եղիազար և Նահապետ, և քաղաքավարի և քիչ մըն ալ շողոքորդ գիրեր ստորագրած էին, իսկ այս անգամ Օրի հռոմէադաւանութեան բացորձակ պայմանը կը բերէր, և պէտք էր այդ կէտին վրայ կաթողիկոսին հաւանութիւնը առնել։ [illegible] (ԼԵՕ. Ա. 427), չկրցաւ կաթողիկոսը համոզել և դաւանափոխութեան հաճեցնել։ [illegible] (ԼԵՕ. Ա. 428)։ Հարկաւ Նահապետ չէր կրնար չյիշել որ Լատին քարոզիչներ Նոր-Ջուղայի Հայ տպարանը փակել տուեր էին, խալամութեան դէմ հրատարակութիւններ ընելու քուլթեամբ, և իրենց աշակերտող Շահրիմանեանց տունը՝ Հայ ազգային շահերուն դէմ շարժեր էին։ Այդ պարագան, որ պատմական է, պէտք է դնենք Զամչեանի պատմութեան հանդէպ, որ կը գրէ, թէ Իննովկենտիոս ԺԲ պապ, Նահապետի 1695 սեպտեմբեր 5'ի նամակը առնելով՝ պատասխանը ուշացուցած էր կաթողիկոսի գահընկէցութեանը պատճառով, և թէ աթոռ դառնալէն ետքը, պատասխանը ղրկած էր Խաչատուր Կարնեցիի ձեռքով, և ազնիւ ընծաներ և [illegible] ալ միասին։ Ասոնց հետ Կղեմէսի գիրքէն օրինակ մըն ալ, որ Հայերու վերագրուած մոլորութիւնները կը հերքէ, և թէ Նահապետ ալ ամենայն հպատակութեամբ կատարեալ կաթողիկութեան գիր մը յղած էր 1699'ին, որուն բնագիրը Հռոմի մէջ չգտնուելով, Մխիթարեանց ձեռք ինկած կ'ըլլայ (ՉԱՄ. Գ. 726), ուսկից կազմուած է լատիներէն թարգմանութիւնը (ԱՁԱ. 132)։ Օրիի և Նահապետի միջեւ կատարուած եղելութիւնը, զօրաւոր փաստ է հաստատելու մեր կարծիքը, թէ Հայոց կաթողիկոսներ քաղաքական օգնութեան և նիւթական նպաստի յոյսով, դժուարութիւն չէին զգար լոկ խօսքով հաճոյակատար ըլլալ, առանց իրենց դիրքէն շարժուելու. և ոչ առաւելն այսպէս եղած կրնայ բսուիլ Նահապետի ընթացքը իւր առաջին նամակովը։ Իսկ այս վերջին նամակին գոնէ Հռոմի դիւաններուն վկայութիւնն ալ կը պակսի. իսկ ընծաներն ու աթոռը գրոյցէ մը աւելի չեն։ Ինչ որ Զամչեանի պատմութեամբ՝ իբրեւ Իննովկենտիոսէ Նահապետի ընծայուած աթոռ կը ցուցուի, հայրապետական աթոռի կաթողիկէ մըն է, կամ սիւներու վրայ ամպհովանի մըն է, կատարելապէս Արեւելեան գործուած Էջմիածինի կաթողիկէներուն նմանութեամբ, եւրոպական ոճէն և արհեստէն օտար, և որ աւելին է վրան հայերէն տառերով։ Պետրոս [illegible] անունը կը կարդացուի (ՄՈՎ. 281), որ անշուշտ նուիրողին, կամ նուիրող հասարակութեան առաջնորդին արձանագրութիւնն է։ Արդ միեւնոյն 1699 տարին տեղի ունեցած է Նահապետի պաշտօնական և բացորձակ մերժումը հռոմէադաւանութեան հետեւելու, նոյնիսկ Հայոց իշխանութեան վերականգնումին և եւրոպական զինեալ պաշտպանութեան խոստումին հանդէպ (ԼԵՕ. Ա. 428)։ Աւելի խօսիլ պէտք չենք տեսներ այդ մասին։ Կը բաւականանք նկատել տալ, որ Զաքարիա Բանաքեռցի, Խաչատուր Ջուղայեցի, և Սիմէոն Երեւանեցի, բնաւ տեղեկութիւն չունին Նահապետի վերագրուած ենթադրական եղելութիւններէն։

**1845**. Հաւանական է որ Օրի՝ Նահապետ կաթողիկոսին ալ ինքզինքը յայտնած չըլլայ,

վանքի Էջմիածինէ իւր տունն ալ երթալով, ինքզինքը ծածկեց, նոյն իսկ իւր քրոջ ու եղբայրներուն գործերին հանդէպ ամուր մնալով, որոնք Եւրոպացի օտարականէն իրենց կորսուած եղբօր վրայ լուր կը փնտռէին (ԼԷՕ. Ա. 429)։ Բայց ինքզինքը յայտնեց Անգեղակոթի իշխան Մելիք Սաֆրազին, որ Էջմիածինի 1678'ի խորհրդակցութեան մասնակցողներէն էր (§ 1790), և ազգային ձեռնարկին սիրոյն՝ զայն հաշտեցուց գլխաւոր մելիքներէն Մարտիրոսեան Ամիրի հետ։ Մելիքներն ալ հաւաքեց Անգեղակոթի մէջ, և տեղական օժերուն և դիրքերուն վրայ տեղեկութիւններ քաղեց, և դաւանափոխութեան համոզեց։ Սակայն կրօնական պետի մը հաւանութիւնը անհրաժեշտ էր, և այս միտքով Գանձասար նստող Աղուանից Սիմէոն կաթողիկոսին դիմեց, բայց նա ալ իւր միաբանութիւնով մերժողական պատասխան տուաւ. միայն Մեծիրանից Ս. Յակոբի վանահայր, Մինաս Տիգրանեան վարդապետ գտնուեցաւ Օրիին համաձայնող, և անոր հետ իբր Հայ եկեղեցականութեան ներկայացուցիչ Եւրոպա երթալու յանձնառու (ԼԷՕ. Ա. 434)։ Անցողաբար յիշենք թէ այս միջոցին Աղուանից երկիրը բաժնուած էր Սիմէոն և Երեմիա կաթողիկոսներուն միջեւ, որոնք անգամ մը հաշտուելէ յետոյ նորէն գժտուած էին, և որչափ ալ Էջմիածին Երեմիայի կողմն էր, սակայն միշտ աւելի ազդեցիկ դիրք կը պահէր Սիմէոն (ՉԱՄ. 81)։ Ամսուան մը մէջ Օրին ոգեւորեց ամբողջ Արցախի լեռնականները, որոնք տեղական շարժումով և Եւրոպական արշաւանքով իրենց փրկութիւնը մօտալուտ կը տեսնէին, և սիրայօժար կը ստորագրէին որչափ թուղթեր՝ որ Օրին կը պատրաստէր, պապին, կայսեր, կայսրընտիրին, և ուրիշ կարեւոր անձանց։ Եւրոպայէ գալիք արշաւախումբին անհնար լինելով Թուրքիայի վրայէն անցնիլ, Քարլօվիցի հաշտութեան հետեւանօք (§ 1843), պէտք էր որ այն Ռուսաստանի ճամբով Կովկաս իջնէր, կայսրընտիր Յոհան-Գուլիէլմոսի հրամանատարութեամբ։ Հոգ չէր ալ եթէ շատ մեծ չըլլար գալիք գունդը, զի Օրին կ'երաշխէր որ Հայերը պիտի կարենային հայթայթել ամէն տեսակ մթերք և 10,000 հեծեալ (ԼԷՕ. Ա. 441), և 200,000 պատերազմող մարդ (ԼԷՕ. Ա. 443), մէկտեղ հաշուելով Վրացիներն ալ և Օսմանեան գաւառներէ եկողներն ալ. մինչ Պարսկական զօրքը շատ չնչին էր համարուած (ԼԷՕ. Ա. 444)։ Այս նախապատրաստութիւնները լրացնելով և գործը ապահովուած կարծելով, Իսրայէլ Օրի՝ Մինաս վարդապետի հետ 1699 ամառուան մէջ դարձաւ Յովհան-Գուլիէլմոսի մօտ, զոր ոգեւորեց իւր լաւատես տեղեկութիւններով, և նորա հրահանգով եկաւ Լէոփոլտ կայսեր մօտ 1699 աշնան միջոցին։ Կայսրը թէպէտ Սպանիոյ յաջորդութեան խնդիրով զբաղուած, բոլորովին չմերժեց օգնելու առաջարկը, այլ զգացուց Ռուսիոյ միաբան ունենալու անհրաժեշտութիւնը, և հրահանգեց դիմել Պետրոս կայսեր, և պատշաճ յանձնարարականներով ճամբայ հանեց 1700 գարունին։ Օրին պէտք ունեցաւ նորէն իւր պաշտպան կայսրընտիրին դառնալ, և անկէ ալ հրահանգուելով և յանձնարարուելով մեկնեցաւ դէպի Ռուսիա։ Հայաստանի մելիքներուն ոգին ալ վառ և միտքերնին հաստատ պահելու համար, Օրի պէտք տեսաւ Յովհան-Գուլիէլմոսի կողմէն նամակ հասցնել անոնց, վստահացնելով թէ Աստուած Օրէին է ընտրել Հայերէնէնէ մէջ և սուրբ գործը գլուխ հանելու համար (ԼԷՕ. Բ. 227)։

**ՕՐԻԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ**

**1846**. Երբոր Օրի և Մինաս Մոսկուա հասան, 1701 յուլիս 11'ին, Ռուսեր այն տագնապներու մէջ էին, որոնք հետեւեցան 1700 նոյեմբեր 19'ին Նարվայի ճակատամարտին մէջ Շուէտացիներու կողմէ կրած պարտութիւններուն։ Եկող պատուիրակներ յանձնարարականներ ունէին կայսրէն և կայսրընտիրէն և Լեհաց Օգոստոս Բ թագաւորէն. և Նաղար Օրեխովիչ հայազգին Լեհաստանէ միասին առած էին իբրեւ տեղական լեզուներու թարգման։ Հակառակ ներքին տագնապին, Պետրոս կայսր մտադրութիւն դարձուց իւր ստորովը եկող առաջարկին, որ իրեն դուռ կը բանար դէպ հարաւ ալ ընդարձակել իւր կայսրութիւնը, երբ մեծամեծ ճիգերով կ'աշխատէր դէպ հիւսիս տարածուիլ, և

**ՕՐԻ Ի ՌՈՒՍԻԱ**

Պալթիկէն ծովային հաղորդակցութիւններ կազմակերպել։ Պետրոս յատուկ պաշտօնէութիւն մը նշանակեց եկող պատգամաւորութեանց, զոր իբրեւ կայսեր և կայսրընտիրի դեսպան կը նկատէր (ԼԷՕ. Բ. 228), որ պէտք եղած տեղեկութիւնները քաղէ Հայաստանի կացութեան, Պարսից զօրութեան, և Եւրոպիոյ օգնութեանց մասին։ Պաշտօնէութեան գլուխն էր Գոլով ռուս իշխան, և թարգման էր Նիկողայոս Սրօթարիուս Ցոյնը (ԼԷՕ. Բ. 235)։ Օրի միշտ նպաստաւոր, և չափազանցեալ նպաստաւոր տեղեկութիւններ կը հաղորդէր գրաւոր և բերանացի, այնպէս որ Պետրոս յատուկ պաշտօնեայ մը կը յղէր Պարսկաստան, Վասիլ Քուչուկով անուն, որպէսզի տեղւոյն վրայ ստուգէ կացութիւնը (ԼԷՕ. Բ. 240)։ Այս բանակցութեանց վրայ՝ պաշտօնական պատգամաւորութիւն մըն ալ Պարսկաստան յղելու միտքը ծագեցաւ, մինչեւ իսկ Պարսկաստանի ամրութեանց յատակագիծները ունենալու պէտքը զգացուեցաւ, բայց այդ գործերուն կատարումը կայսրընտիրին թողուեցաւ։ Այս պատճառներով գործը կը ձգձգուէր, մանաւանդ 1701 դեկտեմբերին Շուէտական պատերազմին մէջ Ռուսներուն տարած յաղթանակը՝ բոլորովին այն կողմը դարձուց Պետրոսի մտադրութիւնը (ԼԷՕ. Բ. 241)։ Օրի ձգձգումներէ յոգնած, Ռուսական բանակին ծառայութեան մտնելու միտքը յղացաւ, որուն պատասխան ստացաւ Պետրոսէ 1702 մարտին, թէ Շուէտական պատերազմէն ետքը անպատճառ ի ձեռքը կ'առնէ այն գործը (ԼԷՕ. Բ 242)։ Օրի և Մինաս ուրախութենէ արտասուելու հասած, այս աւետիսը ամէն կողմ հաղորդելու համար, Նազար Օրեխովիչ թարգմանը կայսրընտիրին, և Միւռոն Վասիլեւսքի հայազգի հարիւրապետը՝ իրենց բարեկամ մելիքներուն յղեցին։ Համակիր պատասխաններ առին կայսրընտիր Յովհան-Գուլիէլմոսէ 1702 աշունին, իսկ Սաֆրաստի և բարեկամ մելիքներուն մօտէն դարձաւ Վասիլեւսքի 1703 գարունին։ Սակայն եկած պատասխանները յուսադրութենէ անդին չէին անցներ։ Կայսրընտիրը՝ Սպանիոյ և Գաղղիոյ և Գերմանիոյ մէջ սկսած պատերազմին պատճառով իւր անմիջական ձեռնարկը անհնար կը տեսնէր, իսկ Պետրոս Մեծն, որ նոյն օրեր, 1703'ի գարունին, Սանկդ-Պետերսբուրգ (Sanct-Petersbourg) քաղաքին հիմերը կը դնէր, բոլորովին այդ գործով էր գրաւուած։ Օրի հասկացաւ թէ իւր մտածած ձեռնարկը առ այժմ չկրնար սկսիլ, նոր գաղափար յղացաւ՝ Եւրոպա դառնալ, և պապին կողմէն Պարսկաստանի դեսպան նշանակուիլ, և այս կերպով աւելի դիւրաւ նախապատրաստական տեղեկութիւնները քաղել։ Ռուսաց կայսրէն գնդապետի աստիճան խնդրեց ու ստացաւ, Մինաս վարդապետը Մոսկուա թողուց, որ գործին ծայրը թողած չերեւայ, և 1704 փետրուար 10'ին Մոսկուայէ մեկնեցաւ, և շիտակ Տիւսսելտորֆ գնաց, ուր կը մնային իւր ամուսինը և երկու զաւակները (ԼԷՕ. Բ. 247)։ Այդ եղելութեանց մէջ, կաթողիկոսը յիշեցինք միայն երբ բացէբաց մերժեց Օրիէ առաջարկուած կաթոլիկանալու գաղափարը (§ 1844). սակայն Նահապետ հեռու չէր ազգային ազատագրութեան ծրագիրէն, միայն չէր ուզեր զայն գնել իւր եկեղեցւոյն ուրացութեամբ։ Ապա թէ ոչ, երբոր պաշտպանութեան խոստումը Ռուսիայէն եկաւ՝ առանց դաւանափոխութեան պայմանի, սիրով ընդունեցաւ Միւռոն Վասիլեւսքի պատգամաւորը, և 1702 նոյեմբեր Դ'ին Օրիի նամակին ալ պատասխանեց խնդակցութիւն յայտնելով, որ Ռուսաց կայսրը պարտաւոր է Հայ ազգի ազատութիւնը հոգալու (ՋԱՄ. Բ. 40)։

**ԼԱՏԻՆՆԵՐ Ի Կ-ՊՈԼԻՍ**

**1847**. Երբոր Հայութեան բախտը չօշափող, կարեւոր՝ բայց և ոչ հիմնաւոր ձեռնարկներ կը կատարուէին Կ-Պոլիսէ հեռու, այնտեղ բոլորովին տարբեր շարժումներ տեղի կ'ունենային, և փոխանակ ազատութեան, նորանոր աղետալի եղելութեանց դուռ կը բանային։ Մէկ կողմէն պատրիարքութեան թեկնածուներու յախուռն մրցումները, և միւս կողմէն Լատին քարոզիչներու և իրենց հետեւողներուն մոլեռանդութիւնը՝ հետզհետէ կը զայրանային։ Մինչեւ այս առեններ միեւնոյն հասարակութեան մէջ կարծիքներու տարբերութեան կերպարանը կը տիրէր, առանց բաժանումի և անջատումի ձեւն առնելու։ Ազգային եկեղեցական իշխանու-

թիւնն ալ, որչափ և պահպանողական և պաշտպանողական ընթացքի հետևող, հայադաւանութեան թոյլատու սկզբունքէն չէր հեռանար, և տարբեր կարծիքներու հետևողներն ալ միևնոյն եկեղեցւոյ մէջ կը մնային, և փոխադարձ անոր վարչութեան ալ կը մասնակցէին, թէպէտ իշխանութիւնը ձեռք անցընելու մրցակցութիւնը կը մղէին։ Ասիկայ ամէն կառավարութեան մէջ ալ կը հանդիպի՝ իբր կուսակցական դրութեան հետևանք։ Հռոմի պապութիւնն ու գործիչներն ալ, չէին քաշուեր այդ ընթացքին համակերպիլ, միշտ այն գերագոյն սկզբունքով, որ պէտք չէ առաջ խտրական խնդիրներ յուզել, և ոչ ալ շատ փոփոխութիւններ պահանջել, այլ ոտքի կռուան կազմելէն ետքը պահանջները հետզհետէ շատցնել։ Մենք տեսանք Կալանոսի Հայ վարդապետի տարազ խնդիրը (§ 1694), և Ցիտուսեան արեղաներուն Հայոց եկեղեցիներուն մէջ քարոզելը (§ 1832). բայց այն ժամանակները անցած էին, և այս միջոցին սկսած էին տարբեր մտածել ու գործել. ուստի ամենախիստ պատիժներով արգելեցին կաթոլիկներուն Հայոց եկեղեցին մտնելը (ԹՕԲ. 45)։ Ասկէ ծագելիք անտեղութիւնները դիտել տալով, Պրաքօնիէ՝ Ցիտուսեանց վանահայրը կը պատասխանէր, թէ չէր կրնար ընդունիլ որ կաթոլիկներն ամենափոքր հաղորդակցութիւն մը ունենային իրենց հերձուածող եղբարց հետ, և թէ ամենէն դառն [illegible] [illegible] պէտք էր առնէին (ԹՕԲ. 47)։ Հռոմէականք ծանր խօսքերով կը պախարակեն և կը նախատեն ժամանակիս մէջ ազգային իշխանութիւն և պատրիարքութիւն վարողները, իբր բռնաւոր հալածիչներ և անգութ դահիճներ, իբր թէ անոնց պարտքը չըլլար՝ իրենց հօտին մէջ մտնող օտարներուն գողութիւնը արգելել, իրենց եկեղեցին անարգողներուն դէմ դնել, և Հայ եկեղեցիներէ հեռացնելով Լատին եկեղեցիներ տանելու անխոհեմ և վտանգաւոր ձեռնարկին առջևն առնել։ Այո՛, մենք պիտի յիշենք կաթոլիկութեան առջևն առնելու համար գործածուած ուժգին և բուռն միջոցներն ալ, բայց պէտք է ճանչնալ, որ անոնց առաջին պատասխանատուութիւնը Լատիններուն վրայ կը ծանրանայ, իրենց անխոհեմ և մոլեռանդ պահանջումներով, և իրենց հետևողներուն խիղճերը չարչրկելով, մինչ այսպիսի բաներ չէին տեղի ունեցած, ցորչափ գործը ներքին զգացմանց շրջանակի մէջ կը մնար, և իրենք ալ կը զգուշանային նորանոր պահանջներէ։ Հայոց եկեղեցին քրիստոնեայ էր այդչափ դարերէ ի վեր, ուղղափառ եկեղեցի էր ի սկզբանէ անտի, միշտ կը մնար ինչ որ էր, միայն Արևմուտքի դիպաբարդած նորութիւններէ կը խորշէր, և Լատիններուն պէտք չէր՝ որ Արևելքի առաքելական և հնաւանդ քրիստոնեաները ստիպէին, իրենց դպրոցական և նորահնար վարդապետութեանց համակերպիլ։ Այդ ընդհանուր տեսութիւնը պարզելէ ետքը պատմական եղելութեանց անցնինք։

**ՍՈՒՊՀԻ ԵՒ ՅԱՋՈՐԴԸ**

**1848**. Պատրիարքութեան աթոռը գրաւած էր Մելքիսեդեկ Սուպհի 1698 մայիսին (§ 1838), և Եփրեմ Դափանցին աքսորով հեռացուցած, իսկ Կիլիկիոյ աթոռին վրայ կը մնար Մատթէոս Սարի (§ 1829)։ Բարեկամական զգացմա՞մբ թէ պատշաճ փոխանակութեա՞մբ, Մելքիսեդեկ համեցաւ Եփրեմը աքսորանքէն դարձնել 1699'ին սկիզբը, և Ադրիանուպոլսոյ առաջնորդութիւնն ալ անոր յանձնել։ Մրցակիցներու սովորական ճիգերու շնորհիւ, Մելքիսեդեկ հազիւ թէ տարին բոլորեց, հակառակութիւնները զօրացած տեսաւ, և գահընկէց եղաւ Եփրեմի դառնալէն քիչ ետքը 1699 յուլիսին, բայց ոչ 23'ին (ՉԱՄ. Գ. 727), այլ 25'ին երեքշաբթի օր, ինչպէս ճշդուած կը գտնենք Սարգիս դպիրին ձեռագիրին մէջ (ՍՐԳ.)։ Նոր անձ մըն էր որ այս անգամ պատրիարքութեան կը բարձրանար, Մխիթար վարդապետ Քիւրտիստանցի կոչուած, որ Սղերդի գաւառին պաշտօնական անունն էր, և պէտք է այնպէս իմանալ, և ոչ թէ յաշխարհէն Կորդուաց (ՉԱՄ. Գ. 727)։ Իսկ Սղերդցի վարդապետ մը հաւանական է Բաղէշի Ամրորդւոյ վանքին միաբաններէն եղած կարծել, քանի որ անոր նախընթացին վրայ աւելի տեղեկութիւն չունինք։ Մխիթարի պաշտօնավարութիւնն ալ երկար չեղաւ, զի միւս տարին 1700 դեկտեմբեր 4'ին նորէն աթոռ կը բարձրանար Մելքիսեդեկ Սուպհին։

*Այդ տարիներու մէջ ալ կը շարունակէին Հայու և Ֆրէնկի վէճերը, որոնց հետզհետէ զայրանալուն առիթ կու տար Լատին քարոզիչներու և լատինացեալ Հայերու կողմէ՝ Ֆրէնկ կոչուածներուն վրայ դրուած արգելքը, որով մեղաւոր կը նկատուէին եթէ Հայոց եկեղեցիներ յաճախէին իրենց բարեպաշտութեանց համար, և կը բռնադատուէին օտարազգի եկեղեցիներ յաճախել, և օտարազգիներու ազդեցութեան ներքեւ մտնել, ինչպէս արդէն բացատրեցինք* (§ 1847)։ *Բայց տակաւին բուռն գործողութիւններ չէին յիշուիր մինչեւ* 1700 *թուականը, ոչ այնչափ Մելքիսեդեկի կամ Մխիթարի հռոմէականութեան հակամէտ կամ թոյլատու ըլլալէն, որպէս ոմանք կը սիրեն կարծել, այլ զի աստիճանով է՝ որ այդ տեսակ գործեր կը սաստկանան։ Հռոմէականութեան հետեւողներն ալ դրուած արգելքներուն տակաւին խստիւ համակերպելու չէին յորդորուեր, մանաւանդ որ կամայ կամ ակամայ ստիպեալ էին պաշտօնական խորհրդակատարութեանց համար Հայ եկեղեցիներու և Հայ եկեղեցականներու դիմել, զի յատուկ Հայ կաթոլիկ եկեղեցիներ չկային, Հայ կաթոլիկ հասարակութիւն մը կամ պաշտօնական կացութիւն մըն ալ չի կար, և եթէ Լատին եկեղեցիներու մէջ լրացնէին այդ խորհրդակատարութիւնները, օտարահպատակ և տէրութեան հակառակորդ և ապստամբ պիտի նկատուէին։*

**1849.** *Երուսաղէմի աթոռին վրայ թողուցինք Յովհաննէս պատրիարքը՝ Նոհուտճի մականուանեալ, որ արդիւնաւոր եղած էր Հայոց ստացութիւնները պաշտպանելուն մէջ, բայց ստիպեալ շատ աճեցուցած էր աթոռին վրայ ծանրացող պարտքերը* (§ 1811)։ *Հրովարտակներ ալ հանել տուած էր, որ Երուսաղէմի գահակալները անվրդով մնան աթոռին վրայ մինչեւ իրենց մահը. սակայն հրովարտակներ միայն իրեն ծառայեցին, որովհետեւ աթոռին վրայ վախճանեցաւ* 1697*'ին* (ԱՍՏ. Ա. 414), *իսկ իրմէ ետքը՝ ալ աւելի խառնակ եղաւ պատրիարքական յաջորդութիւնը։ Մահուան թուականը դրինք Երուսաղէմի պատմագիրին հետեւողութեամբ, վանքի թէպէտ ուրիշ մը տապանագիրին մէջ* 1694 *գրուած ըլլալը յիշուած է* (ԲԱՌ. 57), *սակայն յետին գրողը հարկաւ ստուգելով նշանակած է ճիշդ թուականը։ Երբոր մահուան լուրը Կ-Պոլիս հասաւ,* իշխանաւորք [illegible] *պատրիարք ընտրեցին Գալուստ Զէյթունցի եպիսկոպոսը, Կոյծակ մականուանեալ, և հրովարտակն ալ հանել տուին, բայց Գալուստ իսկոյն Երուսաղէմ չուղեւորեցաւ, այլ աթոռին վրայ ծանրացած պարտքը պատճառելով, ուզեց ազգին մէջ հանգանակութեան ելլել, և Կ-Պոլիսէ սկսելով մեծ շրջագայութիւն մը սկսաւ Եւդոկիա, Սեբաստիա, Բերիա, Ամիդ և Կարին, և տարին լրացուց, բայց ոչ գործը աւարտեց, ոչ հանգանակածէն լուր տուաւ, և ոչ Երուսաղէմ գումար մը հասուց, որ պարտապաններուն բռնադատութիւններէն կը ճնշուէր* (ԱՍՏ. Ա. 415)։ *Ասոր հետ բոլոր այն քաղաքներէն ուսկից կ'անցնէր Գալուստ, շարունակ իրեն վրայ գանգատներ կը հասնէին պատրիարքարան։ Ուստի հարկ եղաւ վերջ տալ այդ անվայել ընթացքին. Գալուստ պաշտօնանկ հռչակուեցաւ, և Երուսաղէմի պատրիարքութեան կոչուեցաւ Մինաս վարդապետ Համդեցի, և հրովարտակը առնուեցաւ* 1698*'ին։ Պէտք է ընդունիլ, որ նոյն ինքն Մինասն էր որ Յովհաննէսի մահուանէ ետքը աթոռին վարչութեան գլուխը կը գտնուէր, Գալուստի թափառայած շրջագայութեանց միջոցին։ Միեւնոյն* 1698 *տարւոյ թուականը կը կրէ Մինասի աշխատասիրած* [illegible] *գրքոյկը, որուն մէջ շատ համառօտ կերպով քաղած է Հայոց և Հռոմայեցւոց վեհապետներուն պատմութիւնը* (ԱՄԳ. 144), *համաձայն իւր գտած տեղեկութեանց, որոնց մէջ աւելորդ է ճշդութիւն և քննադատութիւն փնտռել։ Կ'երեւի թէ Մինաս օգտուեցաւ Երուսաղէմի մէջ անցուցած ժամանակէն, և փափաքեցաւ բան մը արտադրել, որուն մէջ միայն բարի կամքն է գնահատելի։ Երբոր Մինասի հրովարտակը ստացուեցաւ, միանգամայն պետական հրաման հանուեցաւ, որ ուր և գտնուի Գալուստ, ձերբակալուի և Կ-Պոլիս բերուի. այլ նա փութաց գաղտագողի գալ, և ազգին մէջ շփոթութիւններ ձգել, Մինասը*

ԳԱԼՈՒՍՏ ԵՒ ՄԻՆԱՍ

ամբաստանելով և զանազան յերիւրանքներ բարդելով, մինչև որ հարկ եղաւ Մինասի անձամբ Կ-Պոլիս գալ, և Գալուստի գրըպարտութիւնները ցրել, և իւր պատրիարքութիւնը վերահաստատել տալով Երուսաղէմ դառնալ 1699'ին (ԱՍՏ· Ա· 417)։ Երուսաղէմ դառնալէն ետքը պարտաւորուեցաւ տեղացի Իսլամներու հետ դատի մըտնալ և պայքարիլ, որոնք զանազան կարեւոր սեփականութիւններ յափշտակելու պահանջներ կը յարուցանէին։ Մինաս հին հրովարտակներու զօրութեամբ ազգային իրաւունքները պաշտպանեց (ԱՍՏ· Ա· 418)։ Այդ եղելութիւններ տեղի կ'ունենային մասամբ Մելքիսեդեկի և մասամբ Մխիթարի պատրիարքութեան միջոցին։

**ՄԽԻԹԱՐ Ի ԿԱՐԻՆ**

**1850**· Մխիթար Սեբաստացի վարդապետին մասին վերջին անգամ յիշեցինք Կ-Պոլսէ մեկնիլը 1698 սեպտեմբերին, Հայաստանի ներքին գաւառներուն մէջ իրեն ասպարէզ փընտռելու համար (§ 1838), և յատկապէս նըպատակ ունենալով Օլթի և Նարման գաւառները, Կարինի և Կարսի սահմանակցութեան մէջ։ Նաւարկութեամբ Տրապիզոն պիտի ելլար, բայց ալեկոծութենէն հեռըհետէ Էրէյլի և Սինոպ ցամաք ելնելով, վերջապէս Սամսոնէն ճանպան կը փոխէ, ամիս մը կը մնայ Մարսուան, քիչ մըն ալ Ամասիա, և 1699 գարունին կը հասնի Կարին։ Օլթիի վրայ դրած ակնկալութիւնները չճշմարտուելուն, Հինձք գիւղի Կարմիր վանքը կը հաստատուի առաջնորդ Մարգար եպիսկոպոսին մօտ, ուր 3 աբեղաներու հետ 15 ալ աշակերտ գտնուելուն՝ անոնց ուսուցիչ կ'անուանուի (Մխի· 132)։ Այստեղ կը մնայ իբր տարի մը, բայց վերջապէս այդ ալ չբաւականանար իւր ձգտումները գոհացնելու։ Մարգար եպիսկոպոսէ գաւառանի իշխանութիւն ընդունելէ ետքը, կը մըտադրէ նորէն մայրաքաղաք դառնալ, ուր աւելի յաջողութիւն կրնար յուսալ այս անգամ։ Անոնք որ Մխիթարի ամէն մի շարժումին մէջ կաթոլիկական միաբանութեան մը հիմնարկութեան գաղափարը կը թափանցեն, այստեղ ալ նոյն բանը առաջարկած կ'ըսեն Մարգարի, անոր ընծայելով իսկ միաբանութեան առաջնորդութիւնը (Մխի· 136)· սակայն կը կարծենք թէ այս և ասոր նման պարագաներ, գործի մը լրանալէն ետքը մտածուած գաղափարներ են։ Մեղադրելի չեն Մխիթարի երախտաւորեալ աշակերտներ, երբ անոր կեանքին ամէն քայլերուն մէջ՝ հրաշալիք և սքանչելիք և երկնային նշաններ կը տեսնեն։ Կարմիր վանքէն հեռանալէն ետքը, քիչ մըն ալ Կարին քաղաքին մէջ կը մնայ, ուր էր Աւետիք եպիսկոպոս (§ 1837), և որուն համար ըսուած էր, թէ ամէն հնարք ի գործ դրած էր զինքն որսալու և իրեն մօտ պահելու (Մխի· 77), բայց այս անգամ իբրև Մխիթարի հալածիչ կը ներկայացուի, վասնզի ազդարարած է անոր, ուղին Աստուածաբանութեան տասնանցին Համառօտ Փորձադրութեամբ չխօսիլ (Մխի· 138)։ Սակայն Մխիթար Հայ եկեղեցւոյ պաշտօնեայ էր, և Հայ եկեղեցւոյ դաւանութեամբ օծուած և գաւազան առած էր. և միթէ կաթոլիկ եկեղեցւոյ եպիսկոպոսներն ալ չէի՞ն պահանջեր, որ նորահաս վարդապետ մը, ինչպէս էր Մխիթար, իր եկեղեցիէն աւանդուած և հանրութենէն ընդունուած դաւանութեանց դէմ համարձակ չխօսէր։ Արդէն Կարին հաստատուելու միտք չունէր Մխիթար, ուստի կը փութայ Տրապիզոն իջնել, և 1700 յունիսին անկէ մեկնելով, այս անգամ յաջող նաւարկութեամբ յուլիսին Կ-Պոլիս կը հասնի (Մխի· 142), Մխիթար պատրիարքի վերջին օրերը (Մխի· 144), որ դեկտեմբեր 4'ին գահընկէց եղաւ, և Մելքիսեդեկ նորէն աթոռը գրաւեց (§ 1846)։ Մխիթար Թիւրաքիտանցին եղաւ որ Մխիթար Սեբաստացին արտօնեց նորէն Գալաթիոյ Ս· Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ քարոզել (Մխի· 145), իբր Հայոց եկեղեցւոյ վարդապետ։

**ԵՓՐԵՄԻ ՃԻԳԵՐԸ**

**1851**· Մխիթար պատրիարքի յաջորդող Մելքիսեդեկ Սուպհին (§ 1838), որ ամէն ջանք ու զգուշութիւն թափած էր նորէն պատրիարքական աթոռը գրաւելու, այս անգամ ալ բախտաւոր չեղաւ, և կաթոլիկական խնդիրին առաջին բուռն միջադէպը իրեն ալ ողբալի դարձաւ։ Ադրիանուպոլսոյ քահանաներէն երեքը, Կ-Պոլսոյ մէջ Խաչատուր Կարնեցիին

յարած, և անկէ ինչ ինչ հռոմէական բա-ցատրութիւններ ուսած, իրենց տեղը դառ-նալէն ետքը, սկսած էին կրկնել, և ժողո-վուրդին մէջ յուզում պատճառել: Եփրեմ Ղափանցին, որ առաջնորդն էր (§ 1847), փափաքելով իր վիճակին ներքին յուզմանց պատճառները սկիզբէն խափանել, նախա-պէս սաստեց, վերջէն արգիլեց նորաստա-ցիկ Ֆռանկացեալ վարդապետութիւնները խօսիլ; և երբ անոնք յամառեցան իրենց ըն-թացքին մէջ, պարտաւորուեցաւ քահանա-յագործութենէ արգիլել, և քաղաքէն ալ հեռացնելով Կ-Պոլիս յղել Մելքիսեդեկ պատրիարքին, յանձնարարելով զանոնք զըս-պել կամ ուղղութեան բերել: Ասոնք յա-ջողեցան Մելքիսեդեկի պաշտպանութիւնն ձեռք ձգել, արդէն դիւրին բան մըն էր՝ մրցակիցներու մէկէն հալածուողին միւսէն պաշտպանուիլը: Պատրիարքը յանձնարարեց անոնց՝ իրենց տեղը դառնալ, ուր ինքն ալ պիտի երթար պետական յարաբերութեանց համար, և դիւրին կը կարծէր Եփրեմը ամո-քել: Դժբախտաբար շատ շուտ դարձան քահանաները, և իբրև յաղթութիւն տա-րած, իրենց առաջին միտքերը աւելի համարձակ կրկնել, ինչ որ պիտի դայրա-ցնէր Եփրեմ առաջնորդը, որ այս անգամ եպարքոսական հրամանով քաղաքէն վտա-րել տուաւ նոյն երեքը, իբր օտարուստ անձեր և ժողովուրդը յուզելու և պառակ-տելու պատճառ եղողներ: Այս իսկ էր այն առեն Ֆրէնկ և Ֆրանկօյեօլ բառերուն բուն իմաստը: Ինչչափ ալ Քարլովիցի դաշնագի-րէն և 25'ամեայ խաղաղութենէն ետքը դա-դարած էին Թուրքիոյ և Եւրոպիոյ թշնա-մութիւնները, բայց Օսմանեանց միտքէն ջնջուած չէին երկարատև պատերազմները, և թշնամական հոգին մարած չէր երկու կողմերուն մէջ ալ: Հետևաբար պետական շրջանակներու մէջ շատ նշանակալից կը դառնար՝ Քօզանէօլ էն ընտ Ֆրանկօ բացատ-րութիւնը (ՉԱՄ. Գ. 729), զոր եթէ Հայեր դաւանական իմաստով կը խօսէին, Տաճիկ-ներ քաղաքական իմաստով կ'իմանային: Երեք Ադրիանուպոլսեցի քահանաներ Կ-Պո-լիս բերուեցան 1701 յուլիս 5'ին, Գիւտի Նշխարաց շաբաթ օրը, և միւս օր իբր քա-ղաքական կասկածաւորներ Թիւրանի բանտը չղթայակապ արգելուեցան: Այս երեքը պատմութեան մէջ կը յիշուին՝ իբր հռո-մէական սկզբունքներու առաջին զոհերը, թէպէտև անուննին յիշուած չէ: Բայց յայտ-նի կը տեսնուի, թէ ոչ երբեք իրենց միտ-քին կամ համոզման պատճառաւ կրած են գլուխնուն եկած արկածը, այլ պարզապէս լատինական բարեկամութեան և Արևմտ-եան թեկնածութեան համար կասկածաւոր նկատուած, և բացարձակապէս պետական հարուածի մը ենթարկուած են: Ամէն առ-թի մէջ Եփրեմ Ղափանցիին անունը գոր-ծին յարակցած ըլլալուն, հռոմէականաց կողմէ իբրև կաթոլիկութեան առաջին հա-լածիչ նկատուած է:

**1852.** Մելքիսեդեկ պատրիարք որ երկար պայմաններով Ադրիանուպոլիս կ'ուղևորէր,

ԵՓՐԵՄ ՊԱՏՐԻԱՐՔ

հոն հասաւ երբոր ամէն բան աւարտած էր: Գոր-ծին առանց իրեն լրանա-լէն, և իր նպատակին հակառակ վերջաւորութիւն ունենալէն ցա-ւած, եպարքոսին հետ ալ խիստ լեզու գոր-ծածած պիտի ըլլայ, որ անոր ալ զայրոյթը գրգռած է: Ոչ միայն իր առաջարկու-թեանց զոհացում չէ ստացած, և պատ-րիարքութենէ գահընկէց ըլլալու վտանգին է հասած, այլև ինքն ալ իբր թշնամի տէ-րութեանց նպաստաւոր, կասկածելի դար-ձած և իբրև պատժապարտ Թիւրանի բան-տարկութեան դատապարտուած է, երկու ամիսէ աւելի Ադրիանուպոլիս առեն անցը-նելէ ետքը: Որչափ ալ մեծ ըլլար Ղափան-ցիի ազդեցութիւնը եպարքոսին առջև, սակայն Քէօփրիւլիւ Հիւսէյին փաշա, այն խոհական և շրջահայեաց քաղաքագէտն էր, որ Ամճազատէ մականունով ճանչցուած է պատմութեան մէջ, և օտարներուն կողմէ ալ հռչակուած է իր խոհեմ և չափաւոր վարչութեան համար (ԺՈԽ. 316), որով չէր կրնար պարզապէս ուրիշի խօսքին վրայ, այսպիսի անօրինակ խստութեան ձեռնար-կել: Ադրիանուպոլսոյ ժողովուրդն ալ պատրիարքին դէմ ելաւ, և Մելքիսեդեկի դէմ դատախազ կանգնեցաւ, և այս ալ պատճառ եղաւ որ գահընկէց հռչակուելէ ետքը՝ Կ-Պոլիս գրկուելով Թիւրանի բանտը արգելուեցաւ: Իսկ պատրիարքութեան կոչ-

ուեցաւ Եփրեմ Ղափանցին 1701 սեպտեմբեր 1'ին, որ անգամ մը (§ 1812) և երկու (§ 1829) պատրիարքութիւն վարած էր արդէն։ Եփրեմ չուզեց Ադրիանուպոլսէ հեռանալ, այլ թագաւորի և եպարքոսի և դեսպանին մօտ մնալ, և այն տեղէն պէտք եղած արտօնութիւնները ստանալ և հրամաններ արձակել։ Եփրեմ այս անգամ աւելի ազդեցիկ կերպով աշխատեցաւ, կաթոլիկացեալ խմբակին կողմէ՝ Լատիններուն գրգռութեամբ սերմանուած պառակտումներուն առջեւն առնել, անոնց ազդեցութիւնը կտրելով և անոնց գլխաւորները հեռացնելով։ Կ-Պոլսոյ մէջ պատրիարքական փոխանորդ մը նշանակեց, տեղւոյն վրայ վարչական և մատակարարական գործերը հոգալու, սակայն ժամանակակիցներէ երբեք յիշուած չենք գտներ փոխանորդին անունը։

**1853**. Նոր դէմք մը կը սկսի երեւիլ ժամանակակից պատմութեան մէջ, թէպէտ օտարազգի, բայց Հայ ազգութեան գործերուն զբաղող, և ամէն մի եղելութեան մասնակից։ Սա Գաղղիոյ դեսպանն է, Կարոլոս Ֆէրիօլ, Արժանթալի մարքիզը (Charles Ferriol, marquis d'Argental). որ բռնական ճիգեր և ամենակերպ միջոցներ գործածելով յաջողած էր Գաղղիոյ թագաւորութեան կողմէն Կ-Պոլսոյ դեսպան անուանուիլ 1699'ին (ԺՈՒ. 460)։ Իր առաջին ջանքն եղաւ Լատին կրօնաւորներու ազդեցութիւնը նուազեցնել ի նպաստ դեսպանութեան, բայց երբ այս չյաջողեցաւ, ուղղութիւնը փոխեց, և սկսաւ աշխատիլ դեսպանութեան ազդեցութիւնը բարձրացնել գործակցութեամբ Լատին կրօնաւորաց և պաշտպանութեամբ կաթոլիկութեան։ Իր դեսպանութեան սկիզբները, մինչեւ իսկ ժողով մը գումարել տուաւ, հայադաւանութեան պաշտպան և հռոմէադաւանութեան կողմնակից Հայ եկեղեցականները իրարու մօտ բերելով, և երկու կողմերուն պահանջներն ալ չափաւորելով [illegible] մըն ալ պատրաստել տուաւ 1701'ին, որ Հայոց պատրիարքին և Լատին եպիսկոպոսին հաւանութիւնները առնալէ ետքը, պապին հաւանութեան պիտի ներկայուէր Գաղղիոյ դեսպանատան և թագաւորութեան միջնորդութեամբ։ Բայց գործը իր ընթացքը չի կրցաւ լրացնել, և [illegible] (ԹՕԲ. 47)։ Այդ բանը անգի կ'ունենար ճիշդ Եփրեմի նոր պատրիարքութեան սկիզբը, և Հայ եկեղեցականութեան կողմէ ցոյց տրուած խաղաղասիրութեան շնորհիւ. Մոլեռանդ և նախատական գրգիռ մըն էր Ֆէրիօլի ձեռնարկը, զոր չէր կրնար յանձն առնուլ ոչ թէ Եփրեմի սկզբունքներով [illegible] հաստատամիտ մը, այլեւ ոչ որեւէ հեզահոգի և խաղաղասէր զգացումներ ունեցող եկեղեցւոյ պետ մը, երբոր կը տեսնէր իր հնաւանդ և ուղղափառ եկեղեցւոյն դէմ արձակուած անարգանքը։ Հետեւապէս որ եւ է անկողմնակալ դիտողի համար յայտնի ճշմարտութիւն մըն է, որ եթէ Եփրեմի կողմէ բռնի միջոցներ ընդարձակուեցան, անոնց պատասխանատուութիւնը իրմէ աւելի՝ զինքն գրգռողներուն վրայ կ'իյնայ, և հայադաւանութեան պաշտպաններէն աւելի՝ հռոմէադաւանութիւն մուծանելու ջատագովներուն վրայ կը ծանրանայ։ Լատիններ որչափ ալ ուզեն հոգւոյ փրկութեան նախանձայուզութեամբ՝ իրենց ընթացքը վարագուրել, սակայն ստուգութիւն ինքնին կը ցայտէ, որ պապական ազդեցութիւնը տարածելու և քաղաքական միջամտութիւն ընդարձակելու ձեռնարկ մըն էր։ Եթէ Հայեր ալ գտնուեցան, որ այդ օտարուտի և օտարամուտ միջամտութիւնները քաջալերեցին, երկու բան զիրենք կ'արդարացնեն. Հայադաւանին եկեղեցականապէս թոյլատու և լայնախոհ զգացումը, և Հայազգւոյն կրթականապէս զարգացման անյագուրդ ձգտումը։ Այս դիտողութիւններն ընելով՝ կ'ուզենք միայն պատմական ստուգութիւնը իր ճիշդ կէտին բերել, թէ ոչ պիտի չգովաբանենք ոչ Ղափանցիին և ոչ իրեն յաջորդներուն բռնի ձեռնարկները, քանի որ համոզուած ենք, որ բռնի միջոցներ ուղիղ և ապահով կերպով նպատակին չեն տանիր, և ստէպ հակառակ արդիւնք ալ յառաջ կը բերեն, և հալածուած զգացումը տարածուած կը դարձնեն և յաջողելուն կը նպաստեն։

ՖԷՐԻՕԼ ԴԵՍՊԱՆ

**ՄԽԻԹԱՐ Ի Կ-ՊՈԼԻՍ**

**1854**. Գրգռութեան առիթը կ'աւելցընէին լատինամոլներ՝ երբ Լատին եկեղեցիներու մէջ կը հաւաքուէին, թէպէտ Հայ եկեղեցւոյ պաշտօնէութեան չարքէն չէին ելլեր. Լատին վանքերու մէջ գումարումներ կը կազմէին, և մասնաւոր տեղեր ալ կը սահմանէին իրենց գաղտնի համախմբութեանց համար: Ասոր հետ մէկտեղ արտաքին պաշտպանութիւններով ներքին իշխանութեանց դէմ կը մաքառէին, և դեսպաններու հովանաւորութեամբ պատրիարքական աթոռին և պատրիարքներու անձին դէմ բռնանալ կը փորձէին, և իրենց գրգռութիւններով միւս կողմէն ցասումը կը զայրացնէին, և պաշտպանողական ձեռնարկներու կը մղէին: Ժամանակին լատինամիտ խումբին մէջ աւելի կը խօսուէին Խաչատուր Կարնեցի և Մխիթար Սեբաստացի վարդապետները, բայց առաջինը արդէն իր Հռոմի մէջ առացած դաստիարակութեամբը ծանօթ ըլլալով, այնչափ գրգռութիւն չէր յուզեր, որչափ երկրորդը, որ Հայ վանքերու աշակերտ մըն էր: Մանաւանդ երբոր երևան եկաւ, որ երբ մէկ կողմէն Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ քարոզչութիւնը կը վարէր իբր Հայ վարդապետ, միւս կողմէն Կ-Պոլսոյ Բերա օտարաբնակ արուարձանին մէջ տուն մը վարձած էր (Մխի. 150), որուն արտաքուստ գրակազմութեան գործարանի ձեւ տուած, ներքուստ լատինական սկզբունքներ տարածելու կ'աշխատէր (Մխի. 151): Արդէն ամէն Հայ վարդապետի սովորութիւն էր, իր չուրջը աշակերտութիւն մը կազմել, Մխիթար ալ այդ սովորութենէն կ'օգտուէր: Սեբաստացիին աշակերտողներուն մէջ յանուանէ կը յիշուին, Սարգիս Այնթապցի դպիր, Ղազարոս Ակնեցի այրի, Յովհաննէս Սեբաստացի պատանի, Ազարիա Բերացի դպիր, և Եղիա Կոստանդնուպոլսեցի վարդապետ՝ Երուսաղէմի միաբաններէն (Մխի. 146): Մխիթար եղանակը գտաւ Սարգիս և Ազարիա դպիրները աբեղայ ձեռնադրել տալ Գէորգ և Մանուէլ անուններով, որով վանական խումբի մը երևոյթը տուած եղաւ իր հետեւողներուն (Մխի. 149): Գրակազմութեան արհեստարանի ձեւը յիշեցինք, բայց բոլորովին կեղծ չէր այդ նպատակը, որովհետեւ Մխիթարի մէկ զբաղումն ալ գիրք տպել տալն էր Կ-Պոլիս բացուած տպարաններու մէջ: Այդ միջոցին օր մը, 1701 սեպտեմբեր 8'ին, Մխիթար իր գործարան-տունին մէջ, իրեն հետ եղողները կը համոզէ միասին ապրիլ, և Տաճկաստանէ հեռանալով իրենց բնակութիւնը հաստատել այնպիսի տեղ մը, ուր կարենան իրենց ուզած կերպով գործել, ինչպէս էին Արեւելքի մէջ Լիբանանը, իսկ Արեւմուտքի կողմը Պիզապոնէսը: Մխիթարեանները այդ միջադէպը պատմելով՝ կը պարծենան, թէ Մխիթարեան միաբանութեան շինոյ առաջին օրն եղաւ այն (Մխի. 160), բայց տակաւին կանոնական և իրաւական սկզբնաւորութեան նշան մը չտեսնուիր, և եթէ ըլլար ալ, Հայոց պատրիարքութեան և հայադաւան շրջանակին մէջ գործ մը պէտք էր եղած ըլլար: Վասնզի Մխիթար այդ թուականէն առաջ ալ Գաղղիոյ դեսպանատան կից Վեղարաւոր Փրանկիսկեանց (Cappuccini) վանքը կը բնակէր, և կը գործակցէր հայր Յակինթոս վանահօր՝ պառակտեալ Հայերը միացնելու համար: Իսկ 1701 նոյեմբեր 26 թուականով համաձայնութեան պայմանագիր մըն ալ կը պատրաստուէր (Մխի. 165), որով Ֆէրիօլ դեսպան կը յայտարարէր թէ նոր դաւանութեանց վրայ, մեղմացած էր փրանկացեալներուն հանդէպ բռնուած ընթացքը (Մխի. 162): Հետեւաբար անջատական մտադրութիւնը դեռ Մխիթարի միտքին մէջ տեղ բռնած չէր:

**ԱՒԵՏԻՔ ՊԱՏՐԻԱՐՔ**

**1855**. Եփրեմ Ղափանցիին օրով փրանկացեալներու վրայ ծանրացած հետապնդութիւնը, սովորութիւն է անոր վերագրել իբր հեզինակի և սկզբնապատճառի, սակայն դեսպանը կը գրէ, թէ այն հաւատքը Թուրք պետութեան կործանէ, որ երկրաւոր իշխանն է Փրանկաց, և իր աղօթութիւնը ամենակարող է Թագաւորին գլխին վրայ (Մխի. 162): Ուստի պէտք է մեղմել Եփրեմի վրայ եղած դատաստանը, և ոչ ալ անոր վերագրել, եթէ արքունի հրովարտակ մը հրամայեց, բովանդակ կայսերութեան սահմանին մէջ բոլոր Ֆրանկ եղողները ձերբակալել և ցրուել (ՉԱՄ. Գ.

732)։ Այսպիսի հրովարտակ մը ընական կերպով դուռ կը բանար բազմազիմի անիրաւութեանց և բռնադատութեանց, որք առաջ կու գային անձնական թշնամութիւններէ, անհատական վրէժխնդրութիւններէ, և սոսկ չարաչահութիւններէ, և եթէ 1701'ին վերջերը, շատերու վրայ բռնադատութիւններ գործուեցան, տուներ խուզարկուեցան, բանտարկութիւններ եղան, աքսորներ և վտարումներ գործադրուեցան, անոնց իսկական պատճառը Ֆէյզուլլահ գլխաւորն էր։ Այս պատճառով Մխիթար Սեբաստացին և Խաչատուր Կարնեցին ալ Լատին վանքերու մէջ կը պահուըտէին, երբ միւս կողմէն 1701 հոկտեմբեր 26'ի պայմանագիրը կը պատրաստուէր, և Փրանկիսկեան Վեղարաւորաց մեծաւորը Ցակինթոս՝ անձամբ Ադրիանուպոլիս կ'երթար Եփրեմի ալ հաւանութիւնը ստանալու (Մխի. 165), ուսկից ետքը պայմանագիրը Հռոմ՝ պապին և Էջմիածին՝ կաթողիկոսին պիտի ղրկուէր հաստատութեան համար (Մխի. 164)։ Կ'երեւի թէ Եփրեմի վրայ գիջողութեան գաղափար տեսնալուն համար է, որ Ֆէյզուլլահ անոր վրայէ վստահութիւնը կը վերցնէ, և լուր կը հասցնէ Կարին՝ Աւետիք եպիսկոպոսին շուտով Կ-Պոլիս գալ, որ զինքն պատրիարքութեան բարձրացնէ։ Աւետիք և Ֆէյզուլլահ նախածանօթ էին Կարինէ (ԹՕՐ. 54), առաջ պաշտպանութեան օրէն (§ 1831), և յետոյ առաջնորդութեան ժամանակէն, ուստի երբոր Ֆէյզուլլահ Կ-Պոլիս գլխաւորութեան բարձրացաւ, ուզեց իր բարեկամն ալ բախտաւորել, մանաւանդ որ Աւետիք ծանօթ էր իր խստութեամբ նորամուտ վարդապետութեանց դէմ, և Կարնոյ մէջ Լատին կրօնաւորաց վարժարանն ալ փակել տուած էր։ Աւետիք այդ լուրը առած կ'ըլլայ 1701 սեպտեմբերի սկիզբները, վասնզի երկու ամիս պայմանաժամ ուզեց ճամբայ ելնելու (74 ԱՐՐ. 115), և անկէ ետքը Կարինէ մեկնելով Կ-Պոլիս կը հասնէր 1701 դեկտեմբերին (Մխի. 165), և Ս. Յակոբի տօնին՝ ամսոյն 13'ին (ՉԱՄ. Գ. 732), Սամաթիոյ եկեղեցւոյն մէջ խաղաղասիրական քարոզ մը կը խօսէր, և կը փութար Ադրիանուպոլիս երթալ պատշաճը կարգադրելու, ուր Ֆէյզուլլահի միջնորդութեամբ պատրիարքական փոխանորդ անուանուեցաւ, կացութիւնը բարւոքելու յանձնարարութեամբ։ Սակայն իսկապէս Եփրեմը տապալել էր Ֆէյզուլլահի միտքը։ Հազիւ ամիսուկէս էր, որ Աւետիք Ադրիանուպոլիս կը գտնուէր իր նոր պաշտօնով, երբ 1702 փետրուար 1'ին, նոր տոմարով 12'ին, Ս. Սարգսի կիրակէին, ժողովրդական մեծ ցոյց մը կազմուեցաւ Եփրեմի դէմ, և հինգ օր անեւց զրգռութիւնը։ Աւետիք ստիպուեցաւ ծածկուիլ, և Եփրեմ տակաւին պատրիարքութիւնը պահեց, բայց քիչ օրուան համար, որովհետեւ փետրուար 24'ին, նոր տոմարով մարտ 7'ին, Մեծպահոց երկրորդ երեքշաբթին, Աւետիք Եւդոկիացին պատրիարք հռչակուեցաւ Ֆէյզուլլահի պաշտպանութեամբ, և հօրէ առել անոնց ընկերակցութեամբ եպարքոսին առաջը տարուեցաւ Ադրիանուպոլսոյ մէջ։ Եփրեմը Էջմիածին աքսորելու համար տրուած որոշումը՝ իբր Աւետիքի դաժանութեան նշան ցոյց կը տրուի (Մխի. 166), բայց յարմարագոյն է լաւ կողմը մեկնել, Մելքիսեդեկի վրայ փորձուած պետական խստութենէն (§ 1850) ազատելու և հեռու ու ազատ տեղ մը զայն ապահովի հանելու միտքով։ Արդէն այն կողմերու ընիկն էր Ղափանցին, խոր ծերութեան ալ հասած։ Այս միտքը կը քաղուի նոյնիսկ Աւետիքի գրածէն, թէ Եփրեմ յոյժ աղմուկ եր ձգեր ի մէջ ժողովրդեան, և թէ Եփրեմի համար հրաման հանեց գնալ ի սուրբ Էջմիածին, մօտ ի Նահապետ կաթողիկոսին, անդ մնալ (74 ԱՐՐ. 115)։

**1856.** ԱՒԵՏԻՔԻ ԸՆԹԱՑՔԸ

Աւետիքի պատրիարքութեան սկզբնաւորութիւնը խաղաղաւէտ բանակցութեանց ակնկալութիւնները ունեցաւ։ Աւետիքի և Յակինթոսի յարաբերութիւնները աւելի մտերմական եղան Ադրիանուպոլսոյ մէջ, և Աւետիք կրցաւ իր մտադրութեան վրայ Լատինները վստահեցնել, առանց Ֆէյզուլլահի ալ կասկածները արթնցնելու։ Դեսպանն ալ միամտեցաւ Աւետիքի մասին, զոր առաջ իբր դաժան հալածիչ մը նկատած էր, բայց 1702 մարտ 11'ին կը վկայէր, թէ Աւետիք հայերը խաղաղութեան կը յորդորէ, և յունիս 8'ին կը հաստատէր, թէ Կաթոլի-

կոյ հալածանքը բոլորովին վերջացած է (ԹՕԲ. 56)։ Աւետիք այդ միջոցին կը շարունակէր միալ Ադրիանուպոլիս, որ խսկական մայրաքաղաք դարձած էր Թագաւորին և Սպարաքսին և դենպետին ներկայութեամբ. իսկ Կոստանդնուպոլսոյ մէջ իրեն ներկայացուցիչ և փոխանորդ նշանակած էր Յովհաննէս Ամասիացի վարդապետը (ՉԱՄ. Գ. 733)։ Սոյն օրեր Կ-Պոլիս եկած էր Մատթէոս Կեսարացի՝ Սսոյ կաթողիկոսը, մականուանեալն Սարի, որ Կ-Պոլսոյ պատրիարքութենէ Սսոյ կաթողիկոսութեան անցած էր 1694'ին (§ 1829), և եօթը տարիէ հետէ աթոռին վրայ կը մնար։ Սակայն հինէն կազմուած Բերիացւոց պառակտումը, որ պահ մը դադարած էր Ազարիա Կարկառեցիի քաշուելէն ետքը (§ 1816), անգամ մըն ալ արծարծեցաւ Պետրոս Բերիացիին ձեռքով, որ հաւանաբար Դաւիթ և Ազարիա Կարկառեցիներուն ազգականութենէն եղած կ'ըլլայ, և հնօրեայ իրաւունք մը վերանորոգելու ձրգտումով մէջտեղ ելաւ։ Պետրոսի ձեռնարկը 1701'ին կը դրուի, վերիվերոյ Աւետիքի հրապարակ ելած օրերը։ Պետրոս նստաւ Բերիոյ մէջ իբրեւ Սսոյ հակաթոռ, բայց Մատթէոս յանձն չառաւ կաթողիկոսական իրաւասութիւնը բաժնել, ինչպէս ժամանակով հաստատուած էր Խաչատուրի և Դաւիթի միջեւ (§ 1753)։ Մրցակիցը ընկճելու նպատակով Կ-Պոլիս եկաւ, բայց պատրիարքական աթոռին չփոթութեանց պատճառով չկրցաւ արդիւնաւոր ձեռնարկ մը կատարել, և պատեհի անկայութեամբ մայրաքաղաքի մէջ կը դեգերէր։ Եւ տնտ Կ-Պոլիս կը հանդիպին չորս Երուսաղէմի միաբան վարդապետներ (ՉԱՄ. Գ. 733), իսկ Աւետիք Երկոտասան առաքելոց վանքն Ս. Յակոբայ կը գրէ (74 ԱՐՐ. 150), որոնց համար բսուած է, թէ անկարգութեան ինչ գործեալ յեկեղեցւոջ, ձեռամբ որդւոցն Մինաս Համդեցի պատրիարքին կողմէն, թէպէտ ճշդուած չէ՝ թէ ինչ էր գործած անկարգութիւնները։ Մինաս յատկապէս ալ գրած էր Աւետիքի այդ վարդապետներուն մասին, որպէսզի ականջ չկախէ անոնց չարախօսութիւններուն, և զգուշանայ անոնցմէ. սակայն այդ բանը հրապարակի վրայ չլսուեցաւ, և եկող վարդապետներ համարձակ կը խօսէին Մինասի դէմ, տ'ւսակ տեսակ զեղծումներ վերագրելով անոր պաշտօնավարութեան, թէ միաբանութիւնը ցրուեր է, թէ մեծագումար պարտքի ներքեւ ձգած է, թէ կալուածները ծախած է, և թէ բոլոր ապառները Կ-Պոլիս յղած և գրաւ դրած է Ինկլէզ դօշէրճեանին մօտ (74 ԱՐՐ. 150)։ Առաջ Մատթէոս եղաւ, որ իրեն գրաւեց արտաքսեալ վարդապետները, և ժողովական հաւաքումի մէջ ալ անոնք խօսեցուց, որպէսզի Մինասի տեղ Երուսաղէմի պատրիարքութեան անցնի (ՉԱՄ. Գ. 733), և արդէն կաթողիկոս ալ գտնուելով, Եղիազարի նման դիրք մը կազմէ Աթոռեալքի մէջ։

1897. Բայց Մատթէոս իրմէ ճարպիկ մրցակիցի մը բաղխեցաւ։ Աւետիք որ ամէն կողմ սիրոյ և խաղաղութեան օրհնագիրներ ղրկած էր, ժամանակին Մինաս պատրիարքին ալ պարտուպատշաճ յարգանօք գրած էր, ուսկից քաջալերեալ Մինաս, արտաքսեալ վարդապետներուն անտեսումը խնդրած էր։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՄԻԱՑՈՒՄԸ**

Աւետիք ընդհակառակն զանոնք մօտէն բռնեց, Անդրիանուպոլիս կանչեց, և Մինասի դէմ խօսածնին հաւաքեց։ Արդէն Կ-Պոլսոյ մէջ ալ՝ Մատթէոս բաւական յուզում յարուցած էր Մինասի դէմ, կարծելով իրեն օգտին ծառայեցնել, մինչ Աւետիք մէկ կողմէն Մատթէոսի կը սաստէր, որ տեղը դառնայ՝ եթէ չուզէր տուգանքի և վտանգի ներքեւ իյնալ, և միւս կողմէն կառավարութեան կը դիմէր Մինասի գահընկէցութիւնը պահանջելով, և Փէյզուլլահ դենպետին պաշտպանութեամբ իրեն վրայ դարձընելով անոր յաջորդութիւնը, առանց Կ-Պոլսոյ պատրիարքութիւնն ալ թողլու։ Այս է երկու աթոռներու միաւորութեան սկիզբը, որուն ոմանք թուական կը նշանակեն 1701 տարին (ՉԱՄ. Գ. 734). սակայն Աւետիքի պատրիարքութիւնն ալ 1702'ին սկսած ըլլալուն (§ 1853), աւելի ճիշդ է 1702 յուլիս 13'ի հրովարտակով որոշուած ըսել այդ միացումը (ԱՍՏ. Ա. 421)։ Յովհաննէս Հաննա, Երուսաղէմի ողբերգու պատմիչը, այդ միացման վրայ խօսելով, կը գրէ, թէ չարաճճիկ և անխիղճ մարդ, անուամբ և էր [illegible], Բելտիրեւոյ է հօրէն Խորէնց [illegible]

Նայէ և է կամարարաց Նորին, չերկու աթոռոց որբոց առաջնորդութեանն, այսինքն Երուսաղէմ և Կոստանդնուպոլսոյ, ի առաջնորդութեան արարէն (ՀՆՆ· 119)։ *Աւետիքի անունը չկայ, թէպէտ գործը պատմելով գործիչը մատնանիշ կ'ընէ․ բայց որովհետեւ մէկէ աւելի անձերու կ'ակնարկէ Հաննա, իրէք է զայդ մեկնել Երուսաղէմի միաբան վարդապետներուն վրայ, որոնք Մինասէ վրէժ լուծելու համար, իրենց միաբանութեան դէմ դաւաճանեցին, և զայն կորստեան մերձենցուցին, քաջալերելով Աւետիքի փառասիրական և չահադիտական ձգտումները։ Մենք ալ համամիտ ենք համարձակ կերպով մեղադրելու Աւետիքի այդ ձեռնարկը, և զայն իրրեւ մեղադրելի կէտ մը նկատել։ Աւետիք կ'ուզէ ինքզինքը արդարացնել, և կը գրէ թէ ինքը բնաւ հետամուտ չէր, այլ* ստէպ ժամանեաց ի Մայր կայէ յեկեղեցին, ըստ խորհուրդ եկաւ՝ պարապ զնել սորայն (74 ԱՐՐ. 151)։ *Այլ պատմութիւնք զինքը չկրնար արդարացնել, և կը պարտաւորուի ճանչնալ Աւետիքը իբր պատճառ այն աղետալի պատահարներուն, որոց մանրամասնութիւնները պիտի տեսնենք հետզհետէ։ Անցողակի դիտենք, որ թէպէտ պատմութիւնք որոշակի չյիշեր, սակայն եղելութեանց կապակցութիւնք յայտնապէս կը ցուցնեն, թէ ասկէ ծագում առած է՝ Կոստանդնուպոլսոյ և անոր պատրիարքութեան հոգեւորապէս ենթարկեալ վիճակներուն մէջ, Կ-Պոլսոյ աթոռակալներուն իբր Երուսաղէմի և Կոստանդնուպոլսոյ պատրիարք միանգամայն յիշատակուիլը, որ յետոյ երկուքին զատ զատ յիշատակուելուն առաջին քայլն եղած է։*

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ**

**1858**. *Աթոռներու միութեան պատճառով բոլորովին եղծաւ ու խանգարեցաւ Երուսաղէմի աթոռին կարգն ու սարքը, քանի որ չկար այլեւս պատրիարք մը՝ որ միաբանութեան գլուխ, նեփականութեանց տէր, և մատակարարութեան իշխող ըլլար։ Պատրիարքէ զատ ընդհանուր մատակարարի մը պաշտօնը բաւական ժամանակէ ի վեր մնած էր, որուն հնագոյն օրինակներէն մէկն է Պարոնտէր Գրիգորի յանձնուած պաշտօնը* (§ 1603), *և որ նորոգուեցաւ Եղիազար Այնթապցիի վրայ ալ, Աստուածատուրի պատրիարքութիւնը յարգելով մէկտեղ* (§ 1759)։ *Ժամանակ անցնելով գործը սովորականի դարձաւ, և աշխարհականներու անցաւ ընդհանուր մատակարարի պաշտօնը, որ* Նազըր *և* Մէ-Թէմէլէ *կը կոչուէր երբեմն, և վերջէն* Պօղոս *կոչմամբ սկսաւ յիշուիլ անձերու վրայ, և սոյն միջոցին պաշտօնը վարողը հաշակաւոր Պաղպա Մինասն էր։ Աւետիք Երուսաղէմի պատրիարքութիւնը ստանձնելով Պաղպա Մինասին պաշտօնին չդպաւ, այլ Կարապետ անունով մէկ մը իր կողմէ փոխանորդ նշանակեց՝* Նազըր *անունով, և արքունի հրովարտակով Երուսաղէմ ղրկեց, յանձնարարելով որ Պաղպային հետ գործակցութեամբ, անմիջապէս կոչեալ զՄինաս վարդապետ, զոյն հանդերձեալն էր ընտրելոյն էր, դիցեն ընտրեալ է բանդ (ԱՍՏ· Ա· 420)։ Այսպէս կ'ըսէ Երուսաղէմի յիշատակագիրը․ բայց Աւետիք կը գրէ, որ թէպէտ այսպէս հրաման եղած էր, սակայն ինքն խնդրած և ընդունած է, որ Մինաս պատրիարք՝ ինքն էր հալածեալ Բաղտոսի ի ձեռն (74 ԱՐՐ· 151)։ Կարապետ Երուսաղէմ հասնելով գործի ձեռնարկեց 1702 օգոստոս 18'ին (ԱՍՏ· Ա· 421)։ Մինաս պատրիարքին գահընկէցութեան և Կարապետ Նազըրին պաշտօնին հրովարտակները հանդիսապէս հրապարակուեցան, և խիստ քննութիւններ բացուեցան պատրիարքին հաշիւներուն վրայ, որուն մեծամեծ վեղծումներ վերագրուած էին աքսորեալ միաբաններու խօսքով։ Մինաս Համդեցին կրցաւ պատշաճ բացատրութիւնները տալ, ուստի կրկին Կ-Պոլսոյ հետ բանակցութիւններ եղան․ Ֆրանկութեան կամ կաթոլիկութեան կամ աղթարմայութեան գրոյցներ ալ խառնուեցան Մինասը պարտաւոր թողլու համար։ Աւետիք պատրիարք Յովհաննէս Ամասիացի փոխանորդն ալ Երուսաղէմ յղեց* (ՉԱՄ· Գ· 737), *և նոր հրաման ղրկել տուաւ Երուսաղէմի դատաւորին՝ խիստ քննութիւններ կատարելու։ Այս առթիւ մեծ ատեան մը կազմուեցաւ, ուր դատաւորը* կոչեաց զծերանւ այլազգեաց, զփոխանորդս Լատինաց և Յունաց և Ասորւոց, զհամայն միաբանս Ս. Յակոբայ, և զժողովուրդս Հայոց, *որոնք միաբերան Մինասի նպաստաւոր վկայու-*

թուղթ տուեր, թէ՝ «ուր ծածկեցաւ ի ժամանակս իշխանութեան իւրոյ, ծածկեաց ի կորստեան պղծութեանց և հերձուածութեանց. ու վարեաց զինչս ագէն, հաւատարմութեամբ կատարեաց զամենայն գործս վանաց, և ոչ երբեք հակառակեցաւ ի լաւէն կրօնս» (ԱՕՏ. Ա. 424)։ Դատաւորն ալ այդ վկայութեանց համաձայն կազմեց իր վճիռը և Կ-Պոլիս հաղորդեց։ Առով թեթեւցաւ Մինասի կացութիւնը, առկայն պաշտօնէն զրկուած մնաց, և Երուսաղէմի մատակարարական գործերը նազրը Կարապետին, և վանական գործեր վէքիլ Յովհաննէսին ձեռքին անցան, որոնք ուրիշ նպատակ չունէին, բայց եթէ օրեւէ կերպով և միջոցով դրամ և ինչք ձեռք անցընել, և իրենց գլխաւորին հասցնել, հարկաւ իրենց անձնական բաժինն ալ չմոռնալով։ Իսկ միաբաններուն նկատմամբ կարի դղայուն են Հաննայի խօսքերը, թէ վէքիլն ու նազրը «ունէին նաւաճեալ զբնաւ մարմնո ի ներքոյ կամաց իւրեանց ունել» (ՀՆՆ. 122)։ Համեցեալն միջոց մըն ալ Երուսաղէմ մնաց (ՉԱՄ. Գ. 734), և վերջապէս միւս տարին, 1703'ի ամառուան մէջ, Կ-Պոլիս գնաց, տեսնել թէ ինչ կրնայ յաջողցնել իրեն և Երուսաղէմի համար (ԱՕՏ. Ա. 428)։

**1859.** Աւետիք պատրիարքին դառնալով պէտք դիտենք, թէ երբոր նա երկու պատրիարքութիւնները իր ձեռքն անցուց, և արքունական պաշտպանութիւնը ապահովցուց Ֆէյզուլլահ զենպետին անհնակարող միջնորդութեամբը, համարձակ նետուեցաւ ֆրանկացեալներու ձեռնարկը ջնջելու, բայց միշտ առանց ձեռքէ թողլու օտարներու հետ հաշտարար և խաղաղասէր կերպերը։

ԱՒԵՏԻՔԻ ՋԱՆՔԵՐԸ

Ինքն ֆրանկացեալներու խօսք չըներ իր յիշատակարանին մէջ, այլ կը յիշէ, թէ «քաղաքն էին ի մէջ ժողովրդեան յօրինազանցք, որոնք յօրինօք կեան վրայ մէկ ալ կին կ'առնէին» (74 ԱՐՐ. 115)։ Այս բանէն ցուցնելով «ուր մարդիկ» Երեմիա Սահապալեան, Յովհաննէս ու Յարութիւն Թիւթելօղլիք և Նիկողոս Խաքէրօղլի, զորս պաշտօնէ ձգելու դիմում են ըրեր, բայց Ֆէյզուլլահ նոյն իսկ դիմողները թիարանի է դատապարտել տուեր։ Այս առթիւ ալ Աւետիք կը գրէ, թէ «եւ զեա ոչ էր լաւել ուր-դէւութեան էրէն» (74 ԱՐՐ. 116)։ Աւետիք Երուսաղէմի պատրիարքութիւնը ստանալէն, այսինքն 1702 յուլիսէն ոչ շատ ետքը, Ադրիանուպոլսէ Կոստանդնուպոլիս եկաւ։ Մաքրիհօրիա կամ Մաքրիքէօյ գիւղէն մեծ բաղմութիւն մը զինքն դիմաւորեց Մատթէոս Սարի կաթողիկոսի գլխաւորութեամբ, մեծայարգար պատուասիրութիւններ եղան, և քաղաք մտաւ «ընդ մեծ հանդիսիւ» որ «չէր բնաւ լեալ առաջի պատրիարքաց» (ՉԱՄ. Գ. 735)։ Իրեն բացակայութեան միջոցին ապաստանած էին երեք Ադրիանուպոլսեցի քահանաներ, որոնք գրեթէ տարիէ իվեր Թիարանի մէջ բանտարկուած կը մնային (§ 1849), և սկսած էին ազատ շրջիլ։ Ուրիշներ կը գրեն թէ փոխանորդ Ամասիացին ազատած էր անոնք (ՉԱՄ. Գ. 737), մինչ Աւետիք իրեն կը վերագրէ անոնց ազատութիւնը (74 ԱՐՐ. 151). միայն թէ Աւետիքի դառնալէն վախցան, և Ֆրանկիսկեան Վեղարաւորաց վանքը ապաստանեցան, ուր էր Մխիթար Սեբաստացին ալ (§ 1852)։ Աւետիք Կ-Պոլսոյ մէջ ալ խնամով մշակեց Վեղարաւոր Փրանկիսկեանց մեծաւոր Յակինթոսի յարաբերութիւնները, խնջոյքներ ալ պատրաստելով անոր պատուոյն (ՉԱՄ. Գ. 737), և անոր ձեռքով Ֆէրիօլ դեսպանին ալ վստահութիւնը գրաւելով, որ 1702 նոյեմբեր 2'ին, որ է սեպտեմբեր 21'ին, կը գրէր թէ «հաւատոյ բարեկամի վերջացած կ'երեւի» (ԹՕՐ. 56)։ Աւետիք միւս կողմէն փրանկութեան պատրուակով շատերու վրայ կը ծանրանար, ինչպէս Պրուսայի առաջնորդ Սուքիաս եպիսկոպոսին, անունը անծանօթ մնացած նշանաւոր աւագերէցի մը, «յերեւելի երիցանց և յիշխանաւորաց» շատերուն, որոց բանտարկութիւն և գանակոծութիւն սպառնալէ ետքը, ծանր տուգանքներով կը ներէր (ՉԱՄ. Գ. 735)։ Այս պարագան յիմքին կը ցուցնէ, թէ ինչ էր Աւետիքի բուն նպատակը, զոր գիտէր պատշաճ կերպով գեղեցկել՝ իբրեւ գործ «վրէժխնդիր լինելոյ ուղղափառութեան օրինաց», և ոչ միայն ուղիղ դաւանութեան, այլեւ բարեկարգական նախանձայուզութեան կերպարանով, որով ժողովրդական համակրութիւն ալ կը շահէր, մինչ իրմէ նեղուածներ, ամբոխներու խումբ մը կը սկսէին կազմել, և բողոք-

նին եպարքոսութեան տեղակալին կը հաս-ցնէին (ԶԱՄ. Գ. 736). իսկ սա Ֆէյզուլլահէ ստացած հրահանգին համեմատ գանգատող-ները կը բանտարկէր և կը տուգանէր (ԶԱՄ. Գ. 735)։ Այդ միջոցներուն էր որ Յովհան-նէս Ամասիացի Երուսաղէմ կը դրկուէր (§ 1856), և անոր տեղ պատրիարքական փո-խանորդութեան կը կոչուէր Յովհաննէս Զմիւռնիացի վարդապետ (ԶԱՄ. Գ. 737)։ Աւետիք օգտուելով Յակինթոսի վրայ ազ-դած վստահութենէն, առաջարկեց փոխա-դարձ հաշտարար յարաբերութեանց պայմա-նագիր ալ կազմել. և խնդրեց որ Լատին-ներն ալ մասնակցին ըլլալիք ծախքերուն, և միանգամայն իրենց մօտ ապաւինած Մխի-թար վարդապետին և Ադրիանուպոլսեցի քահանաներուն պաշտպանութիւն չընեն, որպէսզի թշնամութեան նշանը վերցուի. և խոստացաւ յաւ ընդունելութիւն ընել ա-նոնց՝ երբոր իրեն դիմեն։ Մինչեւ իսկ Մխի-թարին ուղղուած սիրալիր գիր մըն ալ յանձնեց Յակինթոսի՝ խոստանալով զայն ի [illegible] պատիւ բարձրացուցանել, և ի վերայ [illegible] պատրիարքութեան կացուցանել (ԶԱՄ. Գ. 738)։

**1860**. *Յակինթոս կատարեալ գոհու-նակութեամբ փութաց Աւետիքի պայման-ները գործադրել, որ-պէսզի հաշտութեան պայ-մանները իրականացնէ, և իր հիւրերուն առաջար-կեց վստահօրէն երթալ պատրիարքին մօտ, բացարձակ յայտարարելով թէ այլեւս չկր-նար անոնք իր վանքին մէջ պահել։ Ֆէ-րիօլի ալ Յակինթոսի համամիտ ըլլալուն նշան պիտի ընդունինք, վերեւ յիշուած սեպտեմբեր 21'ի նամակով տուած վկայու-թիւնը (§ 1857)։ Յակինթոսի վերջնական յայտարարութեան վրայ երեք Ադրիանու-պոլսեցի քահանաներ, գացին Աւետիքի մօտ, որ բանիւ խաղաղութեան ընկալաւ զնոսա. իսկ Մխիթար չուզեց համոզուիլ, և ստիպ-ուելով Լատին վանքէն ելլալ, մասնաւոր տուն մը քաշուեցաւ յանձանօթս, և հոն ալ ինքզինքը ապահով չկարծելով ընդ [illegible] պահուըտեր է եղեր, ինչպէս անշուշտ իրմէ լսելով, կը պատմեն իրենները (ԶԱՄ. Գ. 738)։ Մխիթարի կեանքին ամէնէն նշա-*

ՄԽԻԹԱՐԻ ՓԱԽՈՒՍՏԸ

*նաւոր վայրկեաններէն մին է այս, որ ի-րեններէն կը ներկայացուի իբր աւարտու-հալածանքէ մը մազապուրծ գերծանելու պա-րագայ, սակայն պատմական հանգամանք-ներ չեն արդարացներ ենթադրեալ ողբեր-գականութիւնը։ Աւետիք հալածանքի գոր-ծեր չէր կատարեր այդ միջոցին, և անոնց դէմ եղած խոտութիւնները, պատահական էին, և աւելի շահադիտական նպատակ ու-նէին, առատ տուգանքներ շորթելու, որ Մխիթարի մասին չէր կրնար ճշմարտուիլ։ Իսկ կացութեան մասին պէտք է իբրեւ ապացուցական ընդունիլ Յակինթոսի զգա-ցած վստահութիւնը, և Ֆէրիօլի տուած վկայութիւնը, թէ հալածանքը բոլորովին վեր-ջացած կ'երեւի (ԹՕՐ. 56)։ Եթէ Մխիթարի պահուըտելուն վրայ Աւետիք խուզարկու-թիւններ հրամայեց, շատ բնական էր ա-նարգել իշխանաւորին կողմէ կատարուած հետազօտութիւնը, և չկրնար արդարացնել Մխիթարի բարբարեալ երեւակայութիւնը, որ ինքզինք դահճի սուրին ներքեւ կարծե-լով, եկեղեցական սքեմը կը ծալլէ, գուցէ և դէմքին վրայ ալ փոփոխութիւններ կը կատարէ, վաճառական մարդու տարազ կը հագնի, և օտարազգիներու բարեկամու-թենէն օգտուելով ինքզինքը Զմիւռնիա գացող նաւ մը կը նետէ։ Հոն նախ վաճա-ռականներու պանդոկ մը, և յետոյ Յիսուս-եան միաբանութեան Լատին աբեղաներու մօտ կ'իջեւանի, բայց տակաւին ինքզինքը ապահով չզգար, և միշտ Աւետիքի խոնդ-րակները իրեն ետեւէն հետապնդած կ'երե-ւակայէ, հագձեւ կերպով Վենետիկցի նաւ մը կը մտնէ, որ զայն կը հանէ Զակինթիա կամ Զանթա կղզին, բաւական հեռու և Մխիթարի նպատակէն դուրս տեղ մը։ Մխի-թարի Կ-Պոլսէ մեկնիլը կը դրուի 1702 սեպտեմբերին (Մխի. 173), և Զմիւռնիայէ մեկնիլը հոկտեմբերին (Մխի. 174), իսկ Զանթա մնալը կը տեւէ մինչեւ 1703 փետր-ուար (Մխի. 176)։ Մխիթարի նախ Զմիւռ-նիա, և անկէ դէպի Յունաստան երթալը, պիտի վերագրենք իր չփորձութեան և առջեւ եղած առիթէն օգտուելու դիտա-մին, զի շատ յառաջ միտքը դրած էր Արե-ւելքէն և հայրենի կեդրոնէն հեռա-նալ։*

**1861**. Լիբանանի բնակիչ Մարոնիներու մօտ երթալ էր Մխիթարի միտքը (ՄԽԻ. 156), որոնք ազատ վարչութիւն կը վայելէին և յատուկ պատրիարքութիւն ալ ունէին, և Հռոմէականութեան ալ յարած էին ժամանակէս դար մը առաջ, Գրիգոր ԺԳ պապին օրով։

ՄԱՐՈՆԻՆԵՐՈՒ ՄՕՏ

Մխիթարի նախնական այդ մտադրութիւնը, կարի յարմար կու գայ, նոյն միջոցին Մարոնիներու մէջ զօրցած կրօնաւորական ձեռնարկներուն հետ, որոնց հոգի և ներշնչող եղած էր Աբտալլահ Գարաալի, Բերիացի նշանաւոր վաճառականը, իրեն ընկերակից ունենալով Ճիպրայիլ Հավա և Եուսուֆ Պէթըն վաճառականները։ Երեքն ալ ինքզինքնին հոգևորականութեան տուած, 1694ին անձամբ ալ կրօնաւորած էին, և 1701ին Աբտալլահ առաջնորդ ընտրուած էր Ս. Եղիշէի հռչակաւոր մայրավանքին Լիբանանի մայրիներուն Սուրբ Ձորին մէջ։ Մարոնի վաճառականներուն ձեռնարկը նմանօրինակ ազդեցութիւն գործած էր իրենց արհեստակից և մտերիմ հայազգիներէն չորս եղբայրներու վրայ, որպէսզի իրենք ալ Հայերու յատուկ կրօնաւորական հաստատութիւն մը կազմեն Մարոնիներու մօտ և անոնց հովանաւորութեան ներքև։ Այս չորս եղբայրներ՝ որդիներ էին Մուրատի և թոռներ Յովսէփի, որ Պարսկաստանի կողմերէն Բերիա գաղթած էր ժամանակէս իբր կէս դար առաջ, և անհաւանական չէ Ոսկիթոր Ջահկեցիներէն եղած կարծել Յովսէփը։ Չորս եղբայրներուն երիցագոյնն էր Աբրահամ, կարևոր առևտրական տուն մը գլուխ, ժամանակի գործածական առձևերէն բառով՝ [illegible] մը, կամ հայերէն բառով՝ [illegible] մը, որուն վրայ ազդած էր Մարոնի բարեկամներուն օրինակը, և Բերիայէ Լիբանան էր եկած, կրօնաւորական ձեռնարկին համար տեղեկութիւններ առնելու և Աբտալլահի հետ խորհրդակցելու համար (ԱՆՏ.)։ Անշուշտ այդ ամէն պարագաներ Մխիթարի ականջը հասած էին, որ Բերիա եղած էր ժամանակին, և այնտեղի Հռոմէականներուն հետ յարաբերութեան մէջ գտնուած էր (§ 1837), գուցէ և Մուրատեան եղբայրներուն հետ ծանօթացած էր։ Հաւանաբար Զմիւռնիա եկած ատենն ալ, Լիբանանի անցնելու միտքը իրմէ օտար չէր, երբ հալածեալ փախուստի վայրկեանին շփոթութեան մէջ՝ Զանթա գացող նաւ մը նետուեցաւ, և ուղեգիծը փոխուեցաւ։

**1862**. Աւետիք պատրիարք որ 1702 յուլիսին Կ-Պոլիս էր եկած (§ 1857), քանի մը ամիս ետքը նորէն Ադրիանուպոլիս էր դարձած (ՉԱՄ. Գ. 738), ուր հասած էին երեք Ադրիանուպոլսեցի քահանաներն ալ, զորս խաղաղութեամբ իրենց տուներն էր ղրկած առաջուրէն քահանայագործելու համար։

ՆԵՐՔԻՆ ՃՓՈԹՆԵՐ

Հարկաւ նոր միջադէպ մը տեղի ունեցաւ, թերևս երեք քահանաներ՝ կամ անխոհեմ վարմունք մը ունեցան, կամ թէ քաւթեան հանդիպեցան, որ Աւետիք կրկին գայրացաւ անոնց վրայ, և առաջնորդարանին մէջ բանտարկեց, եպարքոսական վճռով պատուհասել տալու։ Միջնորդներ և խնամիներ չկրցան Աւետիքի գայրոյթը իջեցնել, և քահանաները արձակել տալ, ուստի անոնք բռնութեան դիմելով յարձակեցան առաջնորդարանին վրայ, և քահանաները ազատեցին, և պատրիարքին մարդիկը և նոյն ինքն պատրիարքն ալ գանակոծեցին։ Աւետիք ևս քանդեւս գայրացած եպարքոսին առջև ամբաստանեց բռնացող ամբոխավարները, սակայն եպարքոսը Տոպալ Մուսթաֆա փաշա, անուս գինովական մը, պատրիարքին վրայ դարձուց իր ցասումը, թէ ինչ իշխանութեամբ բանտեր և շղթաներ կրնայ ունենալ, և նոյն ինքն Աւետիքը բանտարկել հրամայեց (ՉԱՄ. Գ. 739), ուր և մնաց 27 օր (74 ԱՐՐ. 151), մինչև որ հասաւ Ֆէյզուլլահի պաշտպանութիւնը. որ ոչ միայն Աւետիքը ազատեց, այլ և անոր հակառակորդներէն հինգ հոգի Կոստանդնուպոլսոյ Թիմարանը ղրկել տուաւ։ Երբոր Ադրիանուպոլիս անհանդարտ էր, Կ-Պոլիս ալ հանդարտ չէր, ուր Յովհաննէս Զմիւռնացի փախստականը՝ համարձակ կը դիմէր գրգռութեանց և բռնութեանց՝ մեծամեծ տուգանքներ գանձելու նպատակով։ Փանգալտներուն ձայնը մինչև Ադրիանուպոլիս արձագանգեց, և եպարքոսական հրամանով Աւետիք Կ-Պոլիս դարձաւ ժողովուրդը խա-

զաղացնելու համար։ Բայց արդիւնքը հակառակը եղաւ, զի այս անգամ Աւետիքի դէմ ամբաստանութիւններ գրուեցան Եպարքոսին, որ կրկին Աւետիքը եւ կանչեց քննութեան համար։ Աւետիքի գրածին համեմատ իրեն դէմ եղած ամբաստանութիւնը, փրանկացեալներուն պաշտպանութիւն ընելն էր, որոնցմէ 125 հոգիի ցուցակ մը կազմուած էր, և իրեն եղած հարցումն էր, որ եթէ [illegible] (74 ԱՐԲ. 152)։ Աւետիք չուզեց մեկնիլ առանց Կ-Պոլսոյ տեղակալէն և դատաւորէն բարի վկայութեան գիր մը առնելու, և Յիսնակաց բարեկենդանին, Նոյեմբեր 15'ին, մայր եկեղեցւոյ ընծէն ժողովուրդը հրաւիրեց իրեն համար վկայութիւն տալ։ Ամբոխը բազմութեամբ դիմեց եպարքոսական տեղակալին առաջ, Աւետիքէ դժգոհներուն ամբաստանութիւնները ջրելու։ Տեղակալը բազմութենէն և աղաղակէն խրտչած, զայն ցրուելու համար առջեւ անցնողներէն երեսուն հոգի ձերբակալել տալով [illegible] գանակոծութեան կ'ենթարկէ, զոր մերոնք [illegible] կամ [illegible] կը թարգմանեն։ Երեսուններուն մէջն էր Մատթէոս Սարի կաթողիկոսն ալ, և ամէնքն ալ տուգանքներով ինքզինքնին զանէ բանտարկութենէ կ'ազատեն։ Սակայն Աւետիքի նպատակը չյաջողիր, և առանց վկայագիրի Ադրիանուպոլիս կը մեկնի դեկտեմբեր 3'ին, ինչպէս պէտք կը գտնենք ուղղել նոյեմբեր 3 գրուածը (ՁԱՄ. Գ. 742), զի վերադարձը Աւետիքը Կ-Պոլիս եղած բռնուած էր Յիսնակաց բարեկենդանին (ՁԱՄ. Գ. 741), որ է բուն նոյեմբեր 15'ին։ Աւետիքի համար միշտ պատրաստ էր Ֆէյզուլլահ գեներալին պաշտպանութիւնը, և այս անգամ ալ անով կը յաջողէր Տալտապանը չահիլ և իր հակառակորդները բանտարկել տալ, և միջոց մը նորէն Ադրիանուպոլիս մնալ կառավարութենէ պաշտպանուած և օտարական հովանաւորութեամբ զօրացած։

**1863**. Երբ Աւետիք Ադրիանուպոլսոյ մէջ հանգարտած կը նստէր, Յովհաննէս Զմիւռնացի փոխանորդ՝ ալթէն կ'օգտուէր Կ-Պոլսոյ մէջ իր ուզած կերպով չահագիտական հրամաններ և հրահանգներ արձակել, մինչ իբր պատճառանք գործածելով լատինականութեան ձգտումները և կաթողիկական գեղծումները։ Խստութեամբ կ'արգելէր և կը հալածէր ու կ'այրէր ալ լատիներէնէ թարգմանուած գիրքեր, որոնք Հայ ծէսի հակառակ թելութիւններ կը ներէին։

ԽԱՌՆԱԿ ԳՈՐԾԵՐ

Լատիններու մօտ ուսած և անոնց կողմը բռնող եկեղեցականներուն խորհրդակատարութիւնները կ'արգելէր, կնունքի և թաղումի համար ալ պատրիարքարանէ արտօնութիւն առնել կը պահանջէր՝ դաւանութիւննին ստուգելու պատրուակով, բայց իրօք յատուկ տուրք մը գանձելու նպատակով։ Անոնք որ այդ ամէն պարագաներու մէջ ուղղակի համադաւանութեան դէմ հալածանք մը կը տեսնէին, իրօք իրենց կը հակառակէին՝ երբ կը յայտարարէին, թէ [illegible] (ՁԱՄ. Գ. 742), զի եթէ այդպիսիներ իրօք [illegible] էին, պիտի խղճէին պաշտօնապէս հերետիկոս նկատուած Յոյներուն դիմել մկրտութեան կենսատու խորհուրդին համար։ Աւետիքի և Յովհաննէսի բուռն և ընդհանուր հալածանքի գործեր և հրամաններ կը վերագրուին այդ միջոցին, մինչ նոյն համադաւան պատմողներու կողմէ (ՁԱՄ. Գ. 743), սակայն պատմածներնուն ստուգութիւնը կեղակարծ կը դառնայ Ֆէրիոլ դեսպանին վկայութեամբ, որ ճիշդ այս օրերուն 1903 մայիս 3/14'ին գրած նամակովը կը վկայէ, թէ [illegible] (ԹՕԲ. 57)։ Գիտենք թէ Ֆէրիոլ համակիր մը չէր Աւետիք պատրիարքին, և ոչ ալ անոր վրայ վստահութիւն կը տածէր, և ուրիշ իր ճշմարտութեան կը վերագրէր ստացուած յաջող արդիւնքը։ Սակայն ինչ ալ ըլլայ Ֆէրիոլի և Աւետիքի դէմառդէմ կեղծեալ ընթացքը, մեզի կը բաւէ որ եղելութիւններ և պատահարներ գոհացուցիչ կերպարան ունէին, և կը ստեն այն ահարկու հալածանքներու տեսարանները, զորս համադաւան պատմողներ կը պատկերացնեն (ՁԱՄ. Գ. 743)։ Աւետիք կը պատմէ, թէ անգամ մըն ալ ինքն Կ-Պոլիս եկած է այդ միջոցին 125 անձերու դէմ

*եղած գրգռութիւնը ցածուցանելու, թէ Զմիւռնացին [illegible] Անճէմբոյան, որ [illegible] գրգռութիւններ էր յուզած, թէ ամբաստանութեանց գլխաւորը [illegible] խօսքն էր, որուն ինքն յայտարարած է թէ [illegible]* (74 ԱՐԲ. 152), *թէ վերջապէս* 125 *անձերը կրցած է արդարացնել, և թէ [illegible] Առանցմէ երեքը. Առաքել Շահամիր օղլու և Սրապիոն և Աբրահամ Զալուխ, իրեն դէմ ալ ամբաստանութիւն են բրած, իբրև Երուսաղէմի դրամներուն վատնող, այլ Աւետիք պաշտպանուած է, և Առաքել ու Աբրահամ Թիարան ներուած, թէպէտև Տուլտապան եպարքոս միշտ իրեն հետ հակառակութեամբ է վարուած, սպառնալով թէ [illegible], զի այնպէս ըմբռնած էր թէ ինքն ստարացեալներու պաշտպանութիւն կ'ընէ* (74 ԱՐԲ. 153)։

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՎԻՃԱԿ

**1864**. *Եամէ ազգային ներքին ձեռնարկներ դժուարին կացութիւն ունէին ընդհանուր վիճակը աւելի անհանդարտ էր, և սկզբնապատճառն էր Ֆէյզուլլահ գենպետը, որ անհաւատալի ըլլալու չափ գերիշխանութիւն կազմած էր Մուսթաֆա Բ սուլտանին անձին վրայ, ամէն ուզածը ընել տալու չափ, և ընդարձակ յագուրդ տալով իր հակեւրոպական ձգտումներուն, ցրելով և ցրուելով, քանդելով և ջարդելով ամէնայն ինչ և ամէնայն անձ, որ եւրոպական յարաբերութեանց և մերձաւորութեանց մէջ կը գտնուէր։ Պէտք չէ մոռնալ որ Աւետիք Ֆէյզուլլահի հնօրեայ բարեկամն ու մտերիմը, պաշտպանեալն ու պաշտպանողն էր. սակայն ինչպէս պատմուած պարագաները ցուցուցին, Աւետիք բաւական ճարպիկ էր, նոյն իսկ Ֆէյզուլլահի աչքին ներքեւ, Յակինթաններու և Ֆէրրիօլներու հետ յարաբերութիւններ մշակելու, և իր հաշտարար անսութեանց վրայ անոնց վստահութիւնը գրաւելու։ Սակայն ամէն զօրութիւն, որ բռնական է, իր տարաբախտ վերջը կ'ունենայ, Ֆէյզուլլահի դէմ ընդհանուր ատելութիւնը օրէցօր կը սաստկանար ժողովրդական խաւերուն և զինուորական դասակարգերուն մէջ, և աւելի բորբոքեցաւ, երբ եպարքոս Տուլտապան Մուսթաֆա փաշան ալ Ֆէյզուլլահի գրգռութեամբ և ամբաստանութեամբ, և թագաւորական հրամանով խեղդամահ սպաննուեցաւ, և տեղը անցաւ Ֆէյզուլլահի մտերիմն ու դաւակիցը Ռամի Մէհէմմէտ փաշա, որ զինուորական ալ չէր* (ԺՈՒ. 116)։ *Թագաւորին մայրաքաղաքէ հեռու Ադրիանուպոլսոյ գեղխ կեանքն ալ գանգատի նիւթ դարձաւ, և վերջապէս Կ-Պոլսոյ մէջ խռովութեան և ապստամբութեան դրօշը համարձակ պարզուեցաւ, և Ենիչէրիներու հռչակաւոր կաթսայն էթմէյտանի հրապարակին վրայ հաստատուեցաւ, պահանջելով սուլտանին մայրաքաղաք դառնալը, և Ֆէյզուլլահի ու շատ մը արքունականներու պաշտօնանկութիւնը։ Խռովարարներ շատ պաշտօնականներու ապարանքներն ալ կողոպտեցին, և օրէնսգէտներու պատգամախօսական ատեանէն իրենց գործին արդարացումը հռչակել տուին։ Նոր* 1703 *տարւոյ յուլիս* 11—22'*ին յատուկ պատգամաւորութիւն մըն ալ մայրաքաղաքէ Ադրիանուպոլիս մեկնեցաւ, և անոր բռնադատութեան վրայ Ֆէյզուլլահ պաշտօնանկ եղաւ իր որդիներով և արբանեակներով, և Մուսթաֆա սուլտան խոստացաւ Կ-Պոլիս դառնալ։ Մինչ այդ օրերուն և պատգամաւորութեան մեկնելէն առաջ, յուլիս* 8'*ին, Աւետիք Ադրիանուպոլսէ մեկնած էր Կ-Պոլիս գալու, զոր հնար չէ իբր պատահական դիպուած նկատել, քանի որ մայրաքաղաքի անցուդարձը անծանօթ չէր կրնար ըլլալ Ադրիանուպոլսոյ մէջ, և անշուշտ Ֆէյզուլլահի խորհուրդով ծրագրուած ուղեւորութիւն մըն էր, կերպով մը շփոթութիւնը ցածուցանելու և գենպետին դիրքը պաշտպանելու նպատակով։ Զուրլու հասած ատեն Թոսոսթոյի առաջնորդ Յովսէփ վարդապետ Կեսարացին, և Չէքմէճէ հասած ատեն այլազգի իշխանաւոր մը, Աւետիքը զգուշացուցին Կ-Պոլիս երթալէ, ուր ապստամբութիւնը արդէն յայտնի կերպարան առած էր, բայց ինքն համակերպեցաւ միայն՝ փոխանակ ուղղակի մայրաքաղաք մտնելու, ծովով անցնիլ Իւսկիւտար, որ է նախնի Խրիսոպոլիսը։*

*Աւետիք Իւսկիւտար հասաւ յուլիս* 14'*ին* (ՋԱՄ. Գ. 744), *պատգամաւորութեան մեկնելէն երեք օր ետքը: Աւետիքի այդ ընթացքը յայտնի կը ցուցնէ, թէ նա գաղտնի նպատակի մը կը ծառայէր և որոշ հրահանգի կը հետևէր:*

**ԱՒԵՏԻՔ ՊԱՇՏՕՆԱՆԿ**

**1865**. *Մինչ այս մինչ այն ապստամբներուն խրոխտութիւնը կը բարձրանար Ֆէյզուլլահի պաշտօնանկութեամբը և Մուսթաֆայի դառնալու զիջանելովը, և կը վտանգուէր Ֆէյզուլլահեանց կացութիւնը: Հազիւ թէ կը լսուի որ Աւետիք Իւսկիւտար կը գտնուի, վասնզի իւր հետևորդները ուղղակի ցամաքի ճամբով պատրիարքարան եկած էին, ապստամբ խումբը անոր վրայ կը դարձնէ իւր զայրոյթը, վասնզի ամէնուն յայտնի էր երկուքին միջև տիրող մտերմութիւնն ու համամիտ գործակցութիւնը: Պէտք չէ մոռնալ որ Աւետիքի դէմ եղող ազգային դասակարգ մըն ալ կար, և անոնցմէ աւելի՝ Ֆէրիոլ դեսպանը, որ յայտնի ու գաղտնի ամէն միջոցներ գործածած էր և կը գործածէր Աւետիքը տապալելու: Մինչև հիմայ իւր հնարքները ձախողութեան մատնուած էին Ֆէյզուլլահի զօրաւոր պաշտպանութեան առջև, բայց այլևս այն վերջացած էր: Ուստի Տաճիկ խուժանին, Հայ լատինամիտներուն և Գաղղիացի դեսպանին միաբան միասիրտ դաշնակցութեամբ՝ Աւետիքի կործանումը պատրաստուեցաւ: Առաջ անոր բնակած տունը պաշարուեցաւ, և կ'ըսեն թէ Աւետիք փախուստի առաջարկներն ալ մերժեց, ինչ որ յայտնի կը ցուցնէ իւր գալուն գաղտնի նպատակը, և թերևս ալ Ֆէյզուլլահի վերջնականապէս ինկած ըլլալուն չհաւատալը, արտաքնայարդար ձեւակերպութիւն մը ներկելով Պաշմաքճըզատէ Ալի էֆէնտի նոր դենպետին անուանումը: Սակայն ամբոխավարներ կը փութան Աւետիքի անձին տիրանալ, և երկու օր արգելական պահելէ ետքը, յուլիս* 22'*ին կը փակեն զայն Եէտիքուլէի աշտարակը, պետական անձերու բանտը, մերիններէն Եօթնաբուրգն թարգմանուած* (ՋԱՄ. Գ. 744): *Աւետիքի փոխանորդ Յովհաննէս Զմիւռնիացին ալ կը փնտռուի* (ՋԱՄ. Գ. 745), *ինչ որ կաթոլիկներու գրգռութեան նոր փաստ մըն է, զի անոր անձնաւորութիւնը բնաւ նշանակութիւն չէր կրնար ունենալ ապստամբ ամբոխավարներուն համար* (§ 1863): *Բայց Զմիւռնիացին արդէն ժամանակին փախած և հեռացած էր: Աւետիքի բանտարկութիւնը, իրեն պաշտօնանկութիւնն ալ չենթադրեր, զի ամէն իշխանութեանց տակնուվրայ եղած առեն, նոր ընտրութեան միջոցը կը պակսէր. ուստի իբր երկամսեայ միջոց մը բացարձակ անիշխանութիւն կը տիրէ ազգային շրջանակին մէջ ալ: Իսկ քաղաքական շրջանակը բնաւ բարեփոխութիւն չկրեր, մանաւանդ երբոր Մուսթաֆա սուլտան իւր մայրաքաղաք գալը կը յետաձգէ. որուն վրայ մայրաքաղաքի մէջ* 200,000'*ի մօտ զինեալ խռովարարներէն* (ԹՕՐ. 58) *մաս մը՝ յուլիս* 29'*ին ճամբայ կ'ելլէ Ադրիանուպոլիս երթալ: Իրենց հետ կը միանան այնտեղ գտնուող Եէնիչէրի գունդերն ալ, և Մուսթաֆայի գահընկէցութիւնը կը վճռուի* 1703 *օգոստոս* 11—22'*ին, եղբայրը Ահմէտ Գ սուլտան կը հռչակուի, և գահընկէցը կը փակուի քէֆէս, որ է արքայազուններուն վանդակապատ արգելարանը, ուր* 4 *ամիս միայն կ'ապրի և դեկտեմբեր* 20—31'*ին կը մեռնի* (ԺՈՒ. 319): *Նոր կայսրն Ահմէտ Գ ամէն զիջողութիւններու պատրաստուեցաւ խռովարարները հանդարտեցնելու և շահելու համար, մինչև իսկ սեպտեմբեր* 6'*ին Կոստանդնուպոլիս գալուն առթիւ, նախկին դենպետ Ֆէյզուլլահը անոնց ձեռքը յանձնեց, որ զայն սպաննելէ և մարմինը յօշոտելէ ետքը, փոխանակ թաղելու ծովը նետեցին: Աւետիք տակաւին կը մնար Եէտիքուլէի աշտարակը, և պատրիարք չկար մէջտեղ, ուստի մեծամեծներ նոր եպարքոս Տամատ Հասան փաշայի դիմեցին, և պետական հրամանով նորէն երկու պատրիարքութիւնները բաժնեցին: Կոստանդնուպոլսոյ պատրիարք անուանուեցաւ Գալուստ եպիսկոպոս Զէյթունցի, Ամասիացի ալ կոչուած և Կայծակ մականուանեալ, որ երբեմն Երուսաղէմի անուանական պատրիարք էր եղած* (§ 1847): *Իսկ Երուսաղէմի պատրիարքութեան մէջ վերահաստատուեցաւ Մինաս Համդեցին, որ Կ-Պոլիս կը գտնուէր,*

և խելօք ուղևորուեցաւ Կիլիկիոյ նախկին կաթողիկոս Գրիգոր Պիծակի հետ (§ 1816)։ Սա Հռոմ դիմած էր մեծամեծ ակնկալու-թեամբ, բայց կ'երևի թէ յուսախաբ եղած Կ-Պոլիս էր դարձած, և այս անգամ յանձ-նառու կ'ըլլար Երուսաղէմ երթալ իբրև Մինասի օգնական։ Աւետիքի պաշտօնա-զրկութիւնն ու Մինասի ու Գալուստի ան-ուանումները նշանակուած են 1703 սեպտեմ-բեր 8'ին (ՍՐԳ.), որ է Աստուածածնայ Ծննդ-եան տօնին օրը, այն տարի Խաչի պահոց չորեքշաբթիին հանդիպած։ Մինաս Համդե-ցին Երուսաղէմէ դառնալէն ետքը (§ 1856) Կ-Պոլիս մնացած գիտէինք մինչև նորէն պատրիարքութիւնը ձեռք անցընելը, որ մի-ևնոյն տարին տեղի ունեցաւ։ Բայց միւս կողմէն կը գտնենք, թէ այդ միջոցին սեղի ունեցած է Յարութիւն Էջքէրճեան սար-կաւագին գրածը, որ ըստ ՌՃԾԲ թուոյ, Դժէ փէտան Մինասայ Հայրապետին սրբոյ Երուսաղէմի՝ եղեալ է սուրբ Էջմիածին, ողջոյն քոանով է ջա-րօք սուրբ Երուսաղէմի, հառաչանաց տաղ մը կ'երգէ (ԼԳՅ.)։

**1866**. Որչափ և բանտարկուած և պաշ-տօնանկ եղած, մեծ էր տակաւին Աւետիքի համակիր շարժումը ժողո-վուրդին մէջ, ուստի հա-կառակութեան ցոյցերով ընդունուեցաւ Մայր-ե-կեղեցւոյ մէջ Գալուստի պատրիարքութեան համար աւագերէցին ծանուցումը, որ այդ պատճառով խռչանդանքի ալ ենթարկուե-ցաւ, և ամէն կողմ թնդացին՝ թէ զԱւետիք վարդապետն խնդրեմք աղաղակները (ՋԱՄ. Գ. 745)։ Ֆէրիօլ դեսպան և հռոմէականներ հազիւ ձեռք անցուցեր էին Աւետիքի ան-պաշտպան մնալուն պատեհը, ուստի դես-պանին անդուլ թախանձանօք (ԹՕԲ.59) եպար-քոսը հաւանեցաւ, ոչ միայն Աւետիքի կու-սակիցներէն 15 հոգի անմիջապէս ի ծառա-յութենէ նորա բանտարկել, այլև Աւետիքը հեռացնել ու աքսորել։ Ուստի ձեռուըները ետեւը կապուած, և վիզը շղթայ ձգուած, Եէտիքուլէէ հանեցին և նաւ դրին Ավրատ կղզին տանելու համար (ՋԱՄ. Գ. 745)։ Յիշ-ուած աքսորավայրը փոքրիկ և գրեթէ ա-մայի կղզի մըն է Ասորիքի եզերքը, Լաւո-դիկիոյ և Տրիպոլիսի մէջտեղը, Եւրոպացի-

ներէ Աղբոտառոս գրուած աղաւաղութեամբ (ԹՕԲ. 59), և է հին Արատոս կղզեակը, որ Ռուատ ալ կը կոչուի։ Բայց Ֆէրիօլ այս-չափով չգոհացաւ, և չդադարեցաւ Աւետի-քը հալածելէ, և իւր ատելութիւնը մեծ ըն-դունով, ամենամեծ և խիստ զգուշութեանց մէջոց-ներ ի գործ կը դնէ Աւետիքի դէմ։ Անոր աք-սորն ու բանտարկութիւնը հնար եղածին չափ դժնդակ ընելու կ'աշխատի, և ժանտ բարբարո-սութեամբ մը, որուն օրօրոցները մարդ կը կա-րենայ սոսկալ համարելու, եթէ ընդդէմ իւր փառաց ըլլար իւր նամակներով, և հարկ կը համարէ իր ձեռք ձգել մտածել մաքի բանալ մը մէջ ձ-գել տալ։ Այս անգթութեան նրբութիւնը Ֆերէոլ իր նամակներուն մէջ կը հաւկնի, անանց ամենե-ւին ցաւելու, որով ամէն ոք ի զուր կը փնտռէ զայն արդարացնելու ձորձ մը (ԹՕԲ. 60)։ Աւետիքի Եէտիքուլէէ հանուիլը պէտք է նշանակել սեպտեմբեր 11'ին, Խաչի նաւա-կատիքին, զի յուլիս 22'էն հաշուելով 51 օր մնացած է անհարկու աշտարակին մէջ (ՋԱՄ. Գ. 745)։ Իսկ թէ երբ հասաւ աքսո-րավայրը, որուն նշանակուած չենք գտներ, այլ ամիսի մօտ տեւած կ'ըլլայ Կ-Պոլիսէ մինչև Ավրատ ծովագնացութիւնը։ Աքսո-րավայրին մէջ ծոցի մի տալէ, կը գրէ ինքն (74 ԱՐՐ. 153), և անշուշտ շատ խստամբեր և տագնապալից եղած է աքսորավայրին մէջ անցուցած տարին, թէպէտ յիշատակներ և մանրամասնութիւններ կը պակսին։ Սակայն վերև յիշուած պարագաները, և մութ ու ճախճախուտ նկուղի մէջ փակելու համար՝ Ֆէրիօլի կողմէ եղած թելադրութիւնը, բա-ւական են իբր նմոյշ ծառայել Աւետիքի կրած ծանր նեղութեանց։ Հռոմէականներ իրենց-մէ ոմանց՝ դաւանութեան առիթով կրած նեղութիւններէն խոստովանողական և մար-տիրոսական արժանիքներ կը կազմեն. Աւե-տիքին ալ՝ կաթոլիկ Ֆէրիօլի թելադրու-թեամբ և իւր դաւանութեան պատճառով կրած տառապանքը՝ նոյն շարքին անցընե-լու իրաւունք չունի՞նք արդեօք։

**1867**. Գալուստ Կայծակ թէպէտ պաշ-տօնապէս և պետական հրամանով պատ-րիարք անուանուեցաւ, սակայն խաղաղ պաշտօնավարութիւն չունեցաւ, վասն զի Աւետիքի հիացողներ չդադարեցան երբեք անոր անունը տալէ և զայն աթոռ վերա-

դարձնելու ջանքերէ, երբեմն ողոքական աղերսագիրներով, երբեմն դրամական խոստումներով, և երբեմն ալ

**ԳԱԼՈՒՍՏ ԵՒ ՆԵՐՍԷՍ**

կայծակին դէմ ամբաստանութիւններով: Սակայն մէկ կողմէն նախկին Ֆէյզուլլահեանի մը դէմ նախապաշարեալ հակակրութիւնը, և միւս կողմէն Ֆէրիոլ դեսպանին և Լատին կրօնաւորներուն և կաթոլիկացեալ խմբակին ճիգերը՝ ապարդիւն կը թողուին Աւետիքեանց աշխատութիւնները, իրենցմէ շատերուն ալ նեղութեանց և զանակոծութեանց և բանտարկութեանց պատճառ ըլլալով: Յատկապէս կը յիշուին Աբրահամ վարդապետ Արզումանեան, Մուրթ կամ Ճանպապա մոկանուանեալ, որ 210 հարուածներով գանակոծուեցաւ Փալախայի մէջ, և Պետրոս վարդապետ, որ Աւետիքի քարտուղարն էր, և երեք Երզնկացի քահանաներ, որ նոյնպէս սաստիկ գանակոծութեան ենթարկուեցան, և ուրիշ բազմաթիւ անձեր, որոնք Աւետիքի պաշտպանութիւն ընելնուն թիապարտութեամբ պատժուեցան (ՁԱՄ. Գ. 746): Որչափ Աւետիքի համար համակրութիւն կը յայտնուէր, նոյնչափ հակակրութիւն կար Գալուստի դէմ, և այս պարագայէն ջանաց օգուտ քաղել Աւետիքեանց խումբէն և Մատթէոս Սարիի աշակերտ Ներսէս վարդապետ Պալաթցի, որ զօրութեամբ դրամոց գործը յաջողցնելու առաջարկը տարածեց: Եւ իրօք ալ ժողովեալ յոլով դրամս, և անով զօրացուց Գալուստի դէմ ամբաստանութիւնները. Այս կերպով եպարքոսական վճռով Գալուստ պաշտօնանկ եղաւ և թիարանի բանտարկութեան դատապարտուեցաւ (ՁԱՄ. Գ. 747). բայց կ'երեւի թէ չգործադրուեցաւ, զի Աւետիք կը գրէ, թէ ձախեալ էր ի յԱմասիա (74 ԱՐՐ. 153): Թէպէտ Գալուստ տապալեցաւ, բայց Աւետիքի ազատութիւնն ու պաշտօնի դառնալը չիրականացան, զի Ներսէս աւելի օգտակար տեսաւ իր անունով հանել Կ-Պոլսոյ պատրիարքութեան հրովարտակը: Գալուստի պաշտօնը 10 ամիս իսկ չանցաւ, զի 1704 ապրիլ 25'ին, Նոր կիրակիի երկուշաբթին տեղի ունեցաւ պատրիարքի փոփոխութիւնը (ՍՐԳ.): Աւետիքեանք աւելի գայրացան Ներսէսի ըրածին վրայ, և անոր դէմ բողոքելու և զայն ամբաստանելու շարժուեցան, և որչափ ալ Տամատ Հասան փաշա եպարքոսին օրով չյաջողեցան, և մինչեւ իսկ մատնեցան ի գանձս և ի բանդս և ի ծառայութիւն բերոյ (ՁԱՄ. Գ. 747), սակայն եպարքոսական փոփոխութիւնը կացութիւնն ալ փոխեց: Գալայլը Ահմէտ փաշա, որ եպարքոսութեան կոչուեցաւ 1704 սեպտեմբեր 17'ին՝ Խաչվերացի օրը (ՍՐԳ), թէպէտ փոքրոգի և ունայնասէր անձ մը կը նկարագրուի (ԺՈՒ. 320), բայց գոնէ բնական գործերէ հեռու էր, և խնդիրներ վերջացած տեսնալու հետամուտ. ուստի շուտով կրցան զինքն համոզել, թէ Աւետիք օտարազգիներու դաւաճանութեանց զոհ մըն է, և անոր ներկայութեամբ միայն կրնայ հանդարտիլ Հայերու մէջ տիրող պառակտումն ու խռովութիւնը:

**1868**. Այս համոզմամբ Աւետիքի ազատութիւնը հրամայուեցաւ Գալայլըէն, բայց Աւետիք իւր իսկ աղա-

**ԴԱՐՁԵԱԼ ԱՒԵՏԻՔ**

չանքին և աղերսագիրին կը վերագրէ զայն (74 ԱՐՐ. 153), և կը կարծենք թէ անտեղի չէ բոլոր միջոցները իրարու յարակցել, նոյն իսկ դրամին ոյժը: Ներսէսի պաշտօնանկութիւնն ալ վճռուեցաւ, սակայն Սարգիս դպիր՝ Ներսէս Պալաթցիին 1704 ապրիլ 22'ին պատրիարք ըլլալը նշանակելէն ետքը կը գրէ, թէ Ներսէսս այս կեցեալ եղեւ 1704 հոկտեմբեր 6 (ՍՐԳ): Այս ակնարկը մեզ կ'առաջնորդէ հետեւցնել, թէ Ներսէսի պատրիարքութիւնը, թէպէտ կարճատեւ, սակայն նոյն իսկ չարունակեալ չեղաւ և ընդհատում ունեցաւ, և թէ մինչեւ որ Աւետիք աքսորէն դառնար, Ներսէս նորէն պատրիարքութեան մէջ հաստատուեցաւ 1704 հոկտեմբեր 6'ին: Աւետիքի յիշատակներէն ալ կը քաղենք, թէ Ալբրատի աքսորավայրէն ելնելէն ետքը չիտակ Բերիա է եկած, ուր Հայոց ժողովուրդն զամենայն մարմնոյ պիտոյութիւնս լցին և պատուով հանդերձեցին դէպի Երզնկա, ուր կ'ուզէր երթալ Աւետիք՝ իւր վանքը, որ է Կայիփոսի վանքը քաշուելու: Բայց Երզնկա հասնելու երկու օր մնացած, յատուկ սուրհանդակով հրաման առաւ Կ-Պոլիս դառնալ (74 ԱՐՐ.

153)։ Ներսէս երկրորդ անգամ պատրիար-
քութենէն հանուեցաւ, Աւետիք յանձնառու
եղաւ ազգին մէջ հաշտութիւնը վերահաս-
տատել, և այնպէս կրկին բարձրացաւ պատ-
րիարքական աթոռ 1704 դեկտեմբերին
(ՉԱՄ. Գ. 747)։ Ոմանք բսին թէ Աւետիք
Մինասը Երուսաղէմի պատրիարքութենէն
անգամ մըն ալ վտարելով Կիպրոս աքսորել
տուած և Մինաս ալ Կիպրոսի մէջ մեռած
ըլլայ (ՉԱՄ. Գ. 748), սակայն Երուսաղէմի
մէջ եղող Մինասի գերեզմանը կը ցուցնէ
թէ նա արդէն վախճանած էր 1704 նոյեմ-
բերին, Աւետիքի պատրիարք հաստատուե-
լէն առաջ, ինչ որ Աւետիք ինքն ալ կը
յիշէ, թէ ահա նա վախճանել է (74 ԱՐՐ.
154)։ Իսկ մահուան ամսաթիւը թէպէտ է
14 Նոյեմբեր ամսոյ գրուած է, սակայն պէտք
է իբր տպագրական սխալ նկատել, և Նո-
յեմբեր 24 կարդալ, որպէսզի արդարանայ
յառաջ ուրբաթու մեռած ըլլալը (ԱՍՏ. Ա.
429)։ Աւետիք Երուսաղէմի աթոռին պարա-
պութենէն օգտուեցաւ, նորէն Երուսաղէմի
պատրիարքութիւնը Կ-Պոլսոյ պատրիարքու-
թեան կցելու համար, և պէտք չունեցաւ
ուրիշ մը աթոռէն տապալել և աքսորել։
Համէականք կը սիրեն Աւետիքը ամբաս-
տանել, թէ չէ եւս գոհել զեան տալէն զա-
ծոս երես (ՉԱՄ. Գ. 747), այսինքն 1705 փե-
տրուարը չլրացած, բռնութեանց և հալա-
ծանաց ձեռնարկած ըլլայ։ Սակայն Ֆէրիոլ
միևնոյն օրերը, այսինքն 1705 մարտ 11'ին
կը գրէ, թէ Աւետիք պատրիարք մեծ ակնածու-
թեամբ կը վարուի, և կ'ըսէ ֆրերերը չար խօ-
սող են, և օգոստոս 13'ին ալ կը կրկնէ, թէ
Աւետիք բնաւ նեղութիւն չտար կաթոլիկաց (ԹՕՐ.
63)։ Առոյ չենք ուզեր հաստատել թէ Ֆէ-
րիոլ հաշտ և վստահ եղած ըլլայ Աւետիքի
մասին, զի միանգամայն Աւետիքի հա-
մար կը գրէ, թէ շատ չար և շատ խորամանկ
մարդ է, թէ բնաւ հանգիստ չպիտի թողում զին-
քը, և թէ զինքը Պոլսոյէն ընկճելու ամէն ջանք
պիտի թափեր (ԹՕՐ. 64)։ Բայց մեզի բաւական է
նկատել տալ, որ Աւետիք խռովական ըն-
թացքով հակառակորդին գանգատանաց ա-
ռիթ չէր տար, և նոյն իսկ Ֆէրիոլը իրեն
համար նպաստաւոր վկայութիւն տալու կը
բռնադատէր։ Նշանակութեան արժանի է որ
Աւետիք մինչեւ իսկ յանձնառու կ'ըլլայ

1705 սեպտեմբեր 15/26'ին, Խաչի Նուակա-
տիքին օրը, անձամբ Գաղղիոյ դեսպանա-
տունը երթալ կաթոլիկաց հետ խաղաղութեան
ամրապնդելու համար (ԹՕՐ. 64)։ Աւետիք կը
պահանջէ որ Լատիններ Հայերու դէմ գըր-
գռութեան առիթները խափանեն, իրենց
եկեղեցիներու մէջ Հայերու դէմ նզովքները
դադարեցնեն, և Հայոց եկեղեցիներու մէջ
քարոզելու թոյլտուութիւնը չարաչար չգոր-
ծածեն և լեզունին չափաւորեն (ԹՕՐ. 65)։
Պէտք կը զգանք մտադրութիւն հրաւիրել
այդ առաջարկներուն վրայ, որոնք երբ մէկ
կողմէն Հայերուն ծայրայեղ ներողամտու-
թիւնը կ'ապացուցանեն, միւս կողմէն Լա-
տիններուն վրայ պատասխանատուութիւնը
կը ծանրացնեն, և գրգռութիւններուն ա-
նոնց կողմէ ըլլալը կը հաստատեն։ Եւ տա-
կաւին Ֆէրիոլ կը յայտարարէ, թէ այս խօս-
քերուն համար՝ պատրիարքը կը ջանար բա-
րեկամ ըլլալ մեզ, եթէ կարենար ալ մեր եղբայրու-
թեան համար ինչ ինչ ըսած ըլլար (ԹՕՐ. 65)։
Իբրեւ հետաքրքրական պարագայ յիշենք
այդ այցելութեան առթիւ նոյն ինքն Աւե-
տիքի գրածը, թէ Ֆրանսայոյ թագաւորաց թա-
գաւորին շնորհներն ամէն նկարեալ էին ի սրտին
եղէ զինքն, տեսի և համբուրեցի փափագմամբ
ուրախ, և ցանկայի թե երբ լինէի որ զերեսն անձամբ
ծնրադրեալ զնոր երկրպագեալ տեսոյն արժանանամ, և
համբուրեցից զոտս առաջի յոտից նորա (74
ԱՐՐ. 154)։ Թէ Աւետիք այն օրը այդ զգա-
ցումն ու փափաքը ունեցած է, չենք պըն-
դեր. միայն գիտենք որ այդ խօսքերը գրած
է Գաղղիոյ խառամբեր բանտին մէջ, երբ
իւր ազատութիւնը կը սպասէր նոյն թա-
գաւորէն, որ էր Լուդովիկոս ԺԴ։

**1869.** Աւետիք խոհական ջանքերով
կ'աշխատէր հաշտարար կացութիւն մը ա-
պահովել, առանց հայա-
դաւան եկեղեցւոյ ինք-
նութիւնը զոհելու և ա-
ռանց օտարամուտ կա-
թոլիկացման ճիգերը քաջալերելու. սակայն
արդիւնքները իւր ակնկալութիւնները չը
պսակեցին, և ազգին ներքին վիճակը հե-
տզհետէ աւելի աղմկալից դարձաւ, զի
ամէնէն մանր միջադէպներ ալ զայն կը
ծանրացնէին։ Մէկ կողմէն Լատիններուն և
լատինամիտներուն գրգռութիւնները Ֆէրիոլ

ՊԱՐՏՔԻ ԽՆԴԻՐԸ

*դեսպանին պաշտպանութեամբ, և Ցակինթոս մեծաւորին թելադրութեամբ* (ԹՕԹ. 69), *միւս կողմէն պատրիարքութեան թեկնածու եկեղեցականներուն խորամանկ հնարագիտութիւնները, և ժողովուրդին մէջ ալ արմատացած կուսակցութիւնները, աղէտալի եղելութեանց դուռ կը բանային հետզհետէ։ Պարտքի սովորական գործ մըն ալ ահագին խռովութեան պատճառ եղաւ նոյն միջոցին։ Մինաս Ամդեցիին օրէն Երուսաղէմի գործակալ Երեմիա, հաւանաբար Սահապայեանը* (§ 1856), 22,000 *դահեկանի փոխառութիւն մը առած էր Անգղիացի վաճառականէ մը* (§ 1856), *անունը Լօթբան, և որուն երաշխաւոր գրուած էին Սրապիոն* (§ 1863), *Ալեքսան Քէօմիւրճեան, և Ցովհաննէս Ճինեան, որոնք երկոտասան մորդոլ միւթանէուլ կ'ըսուին* (74 ԱՐՐ. 154), *և հաւանաբար կանուխ յիշուած հակառակորդներով կը լրանան, որք են, Ցովհաննէս և Ցարութիւն Թիւթէլօղլիք, Նիկողոս Խաքէրօղլի* (§ 1859), *Առաքել Շահամիրօղլու, և Աբրահամ Ջալուխ* (§ 1863)։ *Ասոնք Աւետիքի դէմ դատ կը բանան, որ իբր Երուսաղէմի պատրիարք աթոռին անունով եղած փոխառութիւնը վճարէ. իսկ Աւետիք կը դիմադրէ,* Բող տեղը ցոյց տան Բէ ու չինեցաք, Բող լինէ՝ տամ. եթէ վանից վրայ խարճած չուանին, գիտ՞րդ տոյէց ոյո պրամ։ *Ասոնք Երուսաղէմի կնիքով գիր մը կը ցուցնեն, Աւետիք վաւերականութիւնը կ'ուրանայ, և վերջապէս Երեմիայի մեռնելէն ետքն ալ, միւսները* մինչ մեկ տարէ ղոյս տոկան քշեցին, և ող կարացին տանուլ, *անոր համար* քեն պահեն, *սպառնալով* Բէ է ծով Բէ է ցամաք, կամայ յակամայ ղոյս պրամս կ'առնամք (74 ԱՐՐ. 154)։ *Այդ պարտքին խնդիրը կորիզ մը դարձաւ, որուն շուրջը սկսան հաւաքուիլ ամէն անոնք որոնք որևէ կերպով Աւետիքէ ցաւած էին, և որոնց մէջ ինքն կը յիշէ այնպիսիներ, որ* գէրկոս կանայք տանէին, և գէտէ կէն Բողոսլ տանէ։ *Այս խումբին խառնուեցան նաև Մարտիրոս Երզնկացի վարդապետը, մականուանեալ Քիւլհանճի, որ իւր ձեռնասունն էր, և այս երկրորդ պատրիարքութեան ատեն փոխանորդ անուանուած էր, և Հայրապետ Պալիքէսիրցի՝ կամ* Դէրէ թէհէօ, *այսինքն գործակատար նշանակած էր.*

*որովհետև* երկոտան ալ մի կամք մի խորհուրդ լինելով, *և հաւատացեալներն ալ իրենց ձեռքը ըլլալով, պատրիարքի անունով դրամ կը հաւաքէին, և 8 ամիս էր որ գործի վրայ էին. բայց ինչպէս կը գրէ Աւետիք.* մեկ տակ ցոյց ոչ եղաւ, չտրամ տեղեցին, և ինչ պարտք կապեցին. ծանրայ շնոցը խորդաբարծեան, կացցեն հետոյն տեղայ (74 ԱՐՐ. 155)։ *Ահա այս երկուքին ալ Աւետիքի դէմ ելլալուն պատճառը։*

**1870**. *Ազգին մէջ արծարծուած հակառակութիւնները գեղեցիկ առիթ էին Գաղղիացի դեսպանին՝ անոնք*

ԱՒԵՏԻՔԻ ԳՈՐԾԵՐԸ

*եւրքանդելու բորբոքելու, և ամէն հնարաւոր միջոցներով* Նոյնէօլ Հայոց մէջէն հակառակորդներ յարուցանելու *Աւետիքի դէմ։ Այդ խումբին կը խառնուի նաև Մատթէոս Սարի, Կիլիկիոյ գահաղուրկ կաթողիկոսը, որ այլևս Կիլիկիա դառնալէն յոյսը կտրած, ուր Պետրոս Բերիացին զօրաւոր կերպով հաստատուած էր, աչքը դարձուցած էր Կ-Պոլսոյ աթոռին, և լատինամիտներու օգնութեամբ կը յուսար նպատակին հասնիլ։ Մինչև իսկ Ֆէրիոլ՝* ըստ պատրիարքութեան կ'ուզէ դարձնել զայն, և էր ազդեցութեամբը և խորհուրդներովը կ'օգնէ անոր (ԹՕԹ. 66)։ *Սակէ կը սկսի Մատթէոսի ալ լատինամիտ կողմը հակիլը, մինչ անկէ առաջ Աւետիքի պաշտպաններէն էր, ինչպէս տեսանք Մաքրիհօրիայի գիմաւորութեան* (§ 1859), *և տեղակալին ատեանը վկայութեան երթալուն առթիւ* (§ 1862)։ *Աւետիք ինքն ալ իւր յիշատակարանին մէջ իրեն դէմ լարուած մեքենայութեանց մասին տեղեկութիւններ կու տայ, բայց* Ինկլէզ էլչին *կը յիշէ, որ իրեն դէմ հակառակութիւններ կը գրգռէր, որ* նամէրդ էր ողորմէր *Թուրք պաշտօնեաներուն անոնք չահելու համար* (74 ԱՐՐ. 156), *և բնաւ* Ֆրանսզա էլչի *դէկէն մասին գանգատ խօսք չըներ, զի Գաղղիացւոց ձեռքն էր ինկած, և անոնցմէ բարիք կը սպասէր։ Միայն անցողակի կը յիշէ Գաղղիացի դեսպանին տուած այցելութիւնը, և իւր մօր Երուսաղէմ ուխտի երթալուն առթիւ անոր ձեռքով յարմար նաւ մը ճարելը* (74 ԱՐՐ. 155)։ *Սակայն Ֆէրիոլի մէնամոլութիւնները շատ յայտնի են, ամէնէն պատմուած, և իւր իսկ նամակներով հաս-*

տատուած էին, այնպէս որ Աւետիքի լռութիւնը, կամ լաւ եւս անուններու փոխանակութիւնը, բանադրանեալ զգուշաւորութիւն մը կը յայտնուի։ Պէտք չէ աչքէ վրիպեցընել որ յիշատակարանը գրուած է Գաղղիոյ բանտին մէջ, երբ այլեւս Աւետիք միտքին մէջ որոշած էր Գաղղիացւոց դաւանական պահանջներուն հաճոյակատարութեամբ իր ազատութիւնը ձեռք անցընել։ Աւետիք իրաւ իրեն թշնամի դեսպանատուն մը ցոյց կու տայ, բայց իզուր Անգղիականը կ'ամբաստանէ, որ այդ տեսակ խնդիրներու երբեք միջամտած չէր, և իբր բողոքական, միտք ալ չէր կրնար ունենալ Լատին աբեղաները և պապական կրօնքը պաշտպանել։ Նոյն իսկ պարտատէր Եւրոպային Լօթրան, Գաղղիացի մըն է հաւանաբար և ոչ Անգղիացի, ինչպէս անունին հնչումն ալ կը թելադրէ, և անոր ալ ազգութիւնը փոխանակուած է Աւետիքին գրիչին ներքեւ, դեսպանատունին փոխանակուելուն նման։ Աւետիքի երկրորդ պատրիարքութեան տարին լրանալու վրայ էր 1705 տարւոյն հետ, բայց ներքին աղմուկը, և Աւետիքի դէմ հակառակութիւնը հետզհետէ կը զօրանար ազդեցիկ և զրամատէր դասակարգին մէջ, որուն ոյժ կու տային լատինամիտները, թելադրութիւնները կ'ընէին Լատինները, և հովանաւորն էր Գաղղիական դեսպանը։ Աւետիքի համակիր էր իրաւ Հայոց հասարակ ժողովուրդը, որ գոհունակութեամբ կը տեսնէր անոր անխոնջ և անվեհեր պաշտպանութիւնը Հայ եկեղեցւոյն համար, սակայն այդ համակրութիւնը չէր բաւեր Աւետիքի պէտք եղած պաշտպանութիւնը պատրաստել, և առաջն ալ առնուլ այն սարքին և վատ դաւաճանութեանց, որոնք գաղտնաբար կը պատրաստուէին ուղղամիտ, բայց և խրոխտ պատրիարքին դէմ։

ՆԱՀԱՊԵՏԻ ՄԱՀԸ

**1871**. Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան շուրջը կատարուած կարեւոր եղելութիւնները, պահ մը մեր աչքէն հեռացուցին Մայրաթոռոյ գործերը, որոց վրայ վերջին անգամ խօսեցանք՝ Նահապետ կաթողիկոսի Հռոմի հետ կարծեցեալ յարաբերութեանց առթիւ, և յատկապէս յիշեցինք նաեւ Իսրայէլ Օրիի առաջարկութեանց հանդէպ ցուցած ընդդիմութիւնը կաթոլիկանալու պայմանի մասին (§ 1844)։ Նահապետ սիրով կը հաւանէր ազգային ազատութեան համար ըլլալիք ջանքերուն, միայն թէ անոնք առանց դաւանափոխական պայմանի ներկայանային (§ 1846)։ Պատմութիւնը մեզի չէ հասուցած Նահապետի վերջին տարիներէն դէպքերու կամ գործերու յիշատակներ, ուսկից կը հետեւցնենք թէ ամփոփուած և քաշուած կեանք մը ունեցած է Նահապետ իր վերջին տարիներուն մէջ, և հանդարտութեամբ վախճանած է 1705 յունիս 13 չորեքշաբթի օր (ՉԱՄ. Գ. 749), ինչպէս կը կրկնուի ուրիշներէն ալ (ՄՈՎ. 286), և կը հաստատուի Երեւանեցիին վկայութեամբ, որ 1705 տարեթիւը կը դնէ առանց ամսաթիւի (ՋԱՄ. 27)։ Ըստ այսմ իբր թիւրիմացութիւն կը նկատենք ուրիշ տեղ 1706 յունիս 13 գրուած ըլլալը (ՍՐԳ.), մանաւանդ որ այսպէս գրողը էջմիածինի մէջէն չէ։ Նահապետի անձնաւորութեան մասին ակիզբէն փոքրիշատէ տեղեկութիւն տուած ըլլալով (§ 1826), կրկին գրելու պէտք չենք տեսներ. բաւական ըլլայ նկատել տալ որ Ստեփանոս Ջուղայեցիի հակաթոռութենէն ետքը (§ 1834), Նահապետ շատ թուլցուցած պիտի ըլլայ իր առաջին խստութիւնները, միաբաններն ալ քիչցուցած պիտի ըլլան իրենց գանգատներն ու պահանջները, տեսնալով Նահապետի յաղթական վերադարձը (§1835). քանի որ վերջին տարիները շատ հանդարտ ապրեցան էջմիածինի մէջ։ Իսկ Նահապետի վերագրեալ լատինամիտ կամ կաթոլիկական միտումը չկրնար ընաւ հաստատուիլ, քանի որ շատ յայտնի է այդ մասին Օրիին առաջարկին չհաւանիլը և կաթոլիկանալու մասին ցուցած ընդդիմութիւնը (§ 1844)։ Մահուան պարագաներն ալ յիշատակուած չենք գտներ, միայն գերեզմանը յայտնի է իւրաչէն վանքին, Շողակաթի բակին մէջ։

ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՅԱՊԱՂՈՒՄԸ

**1872**. Աւելի կարեւոր կը նկատենք հետազօտել յաջորդի ընտրութեան յապաղումը, որ 1705 յունիսէն մինչեւ 1706'ի վերջերը երկարած է, և այսպիսի նշանաւոր միջադէպ մըն ալ ցարդ առանց բացատրութեան մնացած

է, այնպէս որ հետազօտողներն ալ ստիպ-ուած են գրել, թէ յապաղման եօ-ֆլի-նը մէճ-յօքտուր չէ (ՋԱՄ. Բ. 40)։ Մեր անսութեամբ պէտք է յապաղումը վերագրել այն գժտու-թեան՝ որ յառաջ եկած էր Սահփանոս Ջու-ղայեցիի հակաթոռութենէն, և երկուքի բաժնած էր Արեւելեան վարդապետներուն խումբը, խոր անջրպետ մը սահմանելով Մայրաթոռի և Նոր-Ջուղայի բաժիններուն մէջ, և որ բոլորովին դարմանուած չէր Նահապետի կենդանութեան։ Ջուղայեցի բաժինին գլուխը կը գտնուէր Աղեքսանդր Ջուղայեցին, նոյն ինքն որ Սահփանոսէ առաջ էջմիածին էր եկած անոր կողմէն Նահապետը վարելու (§ 1834), և որ հար-կաւ չէր կրցած ներել Նահապետի պաշտ-պան Մայրաթոռցիներուն՝ Սահփանոսի ա-ղետալի վախճանը (§ 1836)։ Ջուղայեցիք անշուշտ հետամուտ էին իրենց ձեռքն ան-ցընել Մայրաթոռի տիրապետութիւնը, որ պահ մը իրենցմէ եղած էր Աչնթապցիին և Եղեսացիին կաթողիկոսանալովը։ Ջուղայի կարող և ազդեցիկ իշխանաւորներն ալ հար-կաւ ամէն միջոց գործածեցին, որ իրենցմէ դուրս մէկ մը չկարենայ աթոռնական հաս-տատութիւն առնել։ Կ-Պոլսոյ հոյութիւնն ալ, որ կարեւոր դեր ունէր այդ պա-րագաներուն մէջ, Աւետիքի վերջի օրերուն չփոթութեանց երեւէն՝ չէր կրնար Մայրա-թոռի կացութեան մտադրութիւն դարձնել, և քիչ ետքը վրայ եկող Աւետիքի արկածը բոլորովին անհնար կը դարձնէր կաթողի-կոսական աթոռին և ընտրութեան մասին հոգածութիւն ունենալ։ Այդ ամէն տատամ-սութիւնները իրարու խառնուելով, և փո-խադարձաբար իրարու ճիգերը չեզոքացնե-լով, պատճառ եղած են ընտրութիւնը օրէցօր յետաձգելու, և արգելած են ընտրելիի մը վրայ համաձայնութիւն գոյացնելու։ Նոր կաթողիկոսի աթոռ բարձրանալու տարին՝ Երեւանեցիէն Հայոց 1156 թուականը գըր-ուած բլլալուն, ոմանք 1707'ին կարծեցին յետաձգել եղելութիւնը, սակայն պէտք է դիտել որ 1156'ի ամսոյն 1706 սեպտեմ-բեր 26'ին հանդիպելուն, յաջորդ ամիսները միեւնոյն 1706 տարւոյն մէջ կը մնան։ Մեզի մութ է նաեւ Մայրաթոռոյ վիճակը՝ տարիէ աւելի տեւող աթոռոյ պարապութեան մի-ջոցին, և ոչ ալ կը գտնենք իբր տեղակալ գործերը վարող եպիսկոպոսին անունը, որ հարկաւ Նահապետի հինաւուրց ընկերներէն կամ երիցագոյն ձեռնասուններէն մէկն էր։ Ձենք գիտեր թէ էջմիածինի դիւաններուն մէջ անծանօթ մնացած յիշատակներ կը գտնուին արդեօք. միայն թէ մինչեւ այս օր այնտեղի գրողներն ալ այդ եղելու-թիւնները լուսաբանած չեն, և նոյն իսկ Երեւանեցին ալ բացատրութիւն մը տուած չէ (ՋԱՄ. 27), թէպէտ և գէչմիշ ամմա չօգ ախոռին ... մնացած բլլալը կը հաստատէ (ՋԱՄ. 81)։ Բայց եթէ պարապու-թեան միջոցին Մայրաթոռի յիշատակներ կը պակսին, Կ-Պոլսոյ աթոռին մէջ կարեւոր և անօրինակ եղելութիւններ տեղի ունեցած են, և կ'անցնինք անոնք պատմել։

**1873.** Աւետիքի դէմ միաբանած հա-կառակորդները (§ 1870) վերջապէս անոր կործանար պատրաստելու

| | |
|---|---|
| ԱՒԵՏԻՔԻ ԹՇՆԱՄԻՆԵՐ | ձեռնարկած էին, և յայտնի կամ գաղտնի ամէն մի-ջոցներ կը գործածէին ոչ |

պէտքի իրենց նպատակին հասնին։ Աւետիք յար կ'ամնէ թէ Լօթրանի պարութին երաշ-խաւորները, յաջողած են և ... էն ... որ է բսել գինքն նեղի պի-տի դնեն, և անով գոհրնկէցութեան առիթ պիտի պատրաստեն։ Կառավարութեան կող-մէն ալ իրմէն կանխիկ կը պահանջէին ... , պատճառելով թէ ... , և Աւե-տիք վտանգը անցընելու համար կը պար-տաւորուէր պարտք ընել և վճարել (74 ԱՐՐ. 155)։ Սակայն տագնապը առօք ալ չանցնիր, և Աւետիքի կացութիւնը հետզ-հետէ կը վտանգուի։ Օսմանեան կառավա-րութեան ընթացքն ալ եւրոպացւոց խիստ կը դառնայ Եւրոպացւոց և եւրոպականու-թեան բարեկամներուն դէմ, մանաւանդ երբ Դալայլը Ահմէտ և Պալթաճը Մէհէմ-մէտ եպարքոսներուն կարճատեւ պաշտօ-նավարութենէ ետքը, պաշտօնի կ'անցնի Զօրլուլու Ալի փաշա, ուղղութեամբը խիստ և բնութեամբը խստասիրտ անձ մը (ԺՈՒ. 321)։ Քանի որ ժամանակին անցնող բա-րուրանքը ֆրէնկջէօ բլլալն էր, Աւետիքի հակառակորդներն ալ նոյնը կը գործածեն

Աւետիքի դէմ, և կառավարութեան բողոք կուտան, թէ Եըմէնի միլլէթի իսլամ'տըր. էկէր բու Ֆրէնկ կ'ըսէ, չէնք տօշէր դը (74 ԱՐՐ. 155)։ Այդ բանը կը հաստատեն նոյն իսկ Աւետիքը կաթոլիկներու հալածիչ ներկայացնել ուզողներն ալ, և կը պատմեն թէ եպարքոսը Աւետիքը յանդիմանած ըլլայ, թէ Աբդ ույմ ֆըլան եօլ չընըլ Ֆրանկոց (ՉԱՄ. Գ. 748)։ Պատմութեան կարգին առջևը չանցած, պէտք է մտադրութիւն դարձնենք Չամչեանի յառաջ բերած մէկ պարագային վրայ ալ, թէ Աւետիքէ ետքը Մատթէոս Սարի, Սսոյ գահազուրկ կաթողիկոսը պատրիարքութիւն վարած ըլլայ երկու ամիս, և իրմէ ետքը այդ պաշտօնին անցած ըլլայ Մարտիրոս Ղրիմեցին 1706 փետրուար 11'ին (ՉԱՄ. Գ. 750)։ Սակայն Աւետիք իւր յիշատակարաններուն մէջ կը յիշէ, թէ անոնք որ իւր պաշտօնանկութիւնը կը պահանջէին, Ղրիմեցին կ'առաջարկէին, թէ անա այս Մարտիրոս վարդապետ բոլոր էրմէնի է, միլլեթ է, գըլ խօշ իսթերին (74 ԱՐՐ. 155)։ Աւետիք լսելով թէ բողոքը ընդունելութիւն կը գտնէ, եպարքոսութեան արկղակալին էր դիմէր, կանխիկ վճարումը ետ ուզելու։ Եւ ահա միւսամ օրն, երկու բարապաններ ներկայացուցեր էին իրեն հրաման, թէ Աւետիք մանզուլ տուրիլ Պօլիս տօտանըն տըշըրըն (74 ԱՐՐ. 156), որ է, Աւետիք պաշտօնանկ պատրիարքը Թենեդոս կղզին բերդարգել ընելու հրաման։ Իսկ այս անուր թուականը կը գտնենք նոյն Աւետիքի ուրիշ յիշատակարանին մէջ, թէ 1706 փետրուար 2'ին էր (00 ԲՆՍ. 143)։ Այդ հաշուով փետրուար 2'է 11 Մատթէոս Սարիի երկամսեայ պատրիարքութեան միջոց չկայ, և հարկ կը լինի անոր անունը ջնջել Կ-Պոլսոյ պատրիարքներուն ցանկէն, ինչպէս ուրիշ գիտողներն ալ ըրած են (01 ՕՐԱ. 122)։

**1874.** Աւետիքի պաշտօնանկութեան և պատժապարտ աքսորման չարժառիթը միայն ազգային գլխաւորներուն և Լօթրանի պարագէն գչարացեալներուն բողոքը չէր, այլ անկէ աւելի

ԱՒԵՏԻՔ Ի ԹԵՆԵՏՈՍ

ուժգին և ազդեցիկ էին Գաղղիոյ դեսպանին բողոքները, որ Աւետիքը կը ներկայացնէր իբրև Լատիններուն ազգութեան և կրօնքին անարգող, Լատին և լատինամիտ անհատներու դէմ անիրաւող, և բարեկամ տէրութեանց յարաբերութիւնները խանգարող, ուստի պաշտօնապէս կը պահանջէր անոր պաշտօնէ հանուիլը և խստիւ պատժուիլը։ Այս դիմումներէ և ժողովրդական բողոքներէ դրդուած, Զօրլուլուն պէտք կը զգար Աւետիքի վրայ ծանրանալ, և զայն գործէն և Կ-Պոլսէ հեռացնել։ Չամչեան կ'աւելցնէ նաև, թէ եօ ֆան հարկանըլ գըն, և արքեզիւլ է քանօ մաքապորտոց, է խանըլխաղան, որ է Արեան քաւքը, հրամայեց աքսորել ի Թենեդոս (ՉԱՄ. Գ. 748)։ Ուրիշ տեղ մըն ալ գրուած է թէ 1706 փետրուար 14/25'ին պատրիարքութենէ հանուելով, երկու ամիս ետքը աքսոր ղրկուած ըլլայ ապրիլ 9/20'ին (ԹՕՐ. 67)։ Սակայն Աւետիք իւր յիշատակարաններուն մէջ յայտնապէս 1706 փետրուար 2'ին կը դնէ Թենեդոս աքսորուիլը (00 ԲՆՍ. 143), և 8 օրէն հոն հասնիլն ալ կը գրէ, թէ երկու գօթըրտըրտըլար օնըն օր գընտըմ է Պօզճա ատասըն ըլըշտըն (74 ԱՐՐ. 155), որ է ըսել փետրուար 10'ին հասած է իւր աքսորավայրը։ Թենեդոս ղրկուիլը նշան մըն է, թէ մեղմօրէն վարուած է Զօրլուլուն Աւետիքի հետ, ինչ որ անգամ մըն ալ անհաւանական կը ցուցնէ գանակոծութիւնն ու Գանլըգույուի բանտարկութիւնը։ Թենեդոսի մէջ միայն տևած է երկու ամիս է բէրտըն (00 ԲՆՍ. 143), որ է ըսել մերձաւորաբար մինչև ապրիլի կէսը։ Աւետիքը բերդարգելութեան մէջ թողլով, դառնանք մայրաքաղաքին եղելութեանց։

**1875.** Աւետիքի պաշտօնանկութենէ քանի մը օր ետքը, փետրուար 11'ին, պաշտօնապէս պատրիարք հռչակուեցաւ Մարտիրոս Երզնկացին, մականուանեալն Ղրիմեցի, որ Աւետիքի բարեբարեալ ձեռնասունն և անոր փոխանորդն ըլլալէն ետքը, իւր բարերարին դէմ էր դարձած, երբ Աւետիք անոր խարդախութիւններն ու գողութիւնները երևան հանելով, պաշտօնէն հեռացուցած էր (§ 1869)։ Մարտիրոս մէկ ալթըօ էլլէրտէնէ ալտը էր (74 ԱՐՐ. 155) եղած Երզնկայի մէջ, զոր Աւետիք քովը առած և կրթած էր։ Մար-

ՔՐԻՄԵՑԻՆ ԵՊԻՍԿՈՊՈՍ

*տիրոս ամուսնացած և քահանայ էր ձեռնադրուած Աւետիքէ, և այրիանալէ ետքը աբեղայ և վարդապետ և Ձմիւռնիոյ նուիրակ էր եղած Աւետիքի առաջին պատրիարքութեան ատեն, և երկրորդ պատրիարքութեան ատեն ալ պատրիարքական փոխանորդ էր անուանուած։ Բայց Մարտիրոսի փոխանորդութիւնը Աւետիքի պատրիարքութեան հետ անմիջական եղած պիտի չըլլայ, զի 1705 յունուար 3'ին կը յիշուի, թէ* Տէր Եսայի, հայր Փափազօղլու Մահտեսի Պօղոսին, վէքիլ էդիպ Աւետիքէ դաւաքէտարին (ՍՐԳ)։ *Իսկ Մարտիրոս Եսայիի յաջորդած կ'ըլլայ, և ամենայն ինչ Աւետիքէ ստանալէ ետքն ալ* այրդէս խայնութիւն *ըրած անոր դէմ* (74 ԱՐՐ. 155)։ *Հնար չէր Մատթէոս Սարին ալ անվարձ թողուլ, որ ձեռնտու եղած էր Աւետիքը տապալելու. ուստի անոր ալ յատկացուեցաւ Երուսաղէմի պատրիարքութիւնը, ոչ իբրև կատարեալ Երուսաղէմի պատրիարք, այլ իբր պարզ Երուսաղէմի առաջնորդ, ձեւ մը զոր կանուխէն ստեղծած էր Կաֆացին* (§ 1787), *Կ-Պոլիս մնալու և Երուսաղէմի դարպասները բացնելու իրաւունքով։ Քիւրհանճին և Սարին իրարու հետ միաբանած, և Աւետիքի հակառակորդներուն ձեռքով յաջողութիւն գտած, պարտաւոր էին իրենց բարեկամները բախտաւորել, և հալածել անոնք որ իրենց նպաստաւոր չէին, այսինքն, Աւետիքի կուսակիցներ էին։ Այդ կարգին կը յիշուին Մանուէլ ու Յովհաննէս քահանաներ, հաւանաբար ուրիշ առթիւ յիշուած Երզնկացիները* (§ 1867), *և Մարգար Պարթեւազն ու խօճա Սահակ իշխանաւորներ, թէպէտ որոշակի ճշդուած չենք գտներ անոնց դէմ եղած գործերը* (01 ՕՐԱ. 122)։ *Մարտիրոս, որ պատրիարքութեան անցաւ, տակաւին եպիսկոպոս ձեռնադրուած չէր, և ձեռնադրուելու համար ալ դիւրութիւն չկար, զի Էջմիածինի աթոռը պարապ էր տակաւին Նահապետի մահուընէ ետքը* (§ 1872)։ *Ատեն չանցընելու համար անոր ալ դարմանը մտածեց Մարտիրոս, և որոշուեցաւ որ Մատթէոս Սարի՝ Սսոյ գահազուրկ կաթողիկոսին ձեռքէն ձեռնադրութիւն ընդունի։ Աշխարհամատրան կիրակէին, որ ապրիլ 7'ին կ'իյնար և միանգամայն Աւետման տօն էր, Մայրեկեղեցւոյ* դրօք քօն ասքէճաններ չինեցին, *այսինքն է ձեռնադրութեան կոչումին պէտք եղող եօթն աստիճանները, և այն տեղ* Սոլէ Լո-Բօղէկեօ Սօսյ՝ Էրէք Եղէխյօղօս Յեռնոտրեօց, *Քիւրհանճիին ուրիշ երկու ընկերներ ալ տալով, որոնք յանուանէ յիշուած չեն։ Եպիսկոպոսական ձեռնադրութիւն մը նորութիւն էր Կ-Պոլսոյ համար, ուստի* ղօրմանալէ քօն Մի էդէրս է նոյն տէստբանն, որ տէնողէն ոդոօշ Մոցէօլ Պէօցէօլ էէն (ՍՐԳ.)։ *Բայց եթէ նորութիւնը հետաքրքրական էր, նշանակութիւնը հաճելի չեղաւ, որովհետեւ կաթողիկոսական իրաւասութեանց չփոթութիւն յառաջ կը բերէր։ Ուստի* դէմօհօոնին դօդճօոց շտօէրօօ, (01 ՕՐԱ. 123), *և փոխանակ Մարտիրոսի դիրքը ամրացնելու, զայն աւելի տկարացուց, որովհետեւ փաստ ընծայեց Աւետիքի կուսակիցներուն Մարտիրոսը իբր կանոնազանց և իբր ապօրինի ձեռնադրուած նկատելու։*

**1876.** *Ուրիշ նոր պարագայ մըն ալ եկաւ եւս քանզեւս վտանգել Քիւրհանճիի դիրքը։ Թէեւ տոսի ետ-*

АՒԵՏԻՔ Ի ՄԷՍԻՆԱ

*դը բանտարկեալ Աւետիք՝ և Կ-Պոլսոյ մէջ Աւետիքի բարեկամները, չարունակ հետամուտ էին ազատութեան շնորհը ձեռք բերել, և այդ նպատակով, կ'ըսէ ինքն,* օրըսօհօլ ողտրկեցէ է Կոստանդնուպօլիս Թօօրտէն Դեհին, Բէ Հըրման Զնօրհէտ ինչ, ազատութիւն աօֆէ, Լ փնօլ է օօօրք յՍրօօօօղէմ։ *Իրեն բարեկամներն ալ հարկաւ նիւթական միջոցներով աշխատեցան զօրացնել աղերսագիրին ազդեցութիւնը, և հակառակ դեսպանին ու լատինամիտներուն ընդդիմադիր ջանքերուն, ազատութեան հրամանը ստացուեցաւ* (74 ԱՐՐ. 192), *ինչ որ նոյէն Զօրլուլու եպարքոսին Աւետիքի հանդէպ բարեացակամ տրամադրութեան նշանն էր։ Բայց երբ Ֆէրիօլի ուղղակի թշնամութեան ճիգերը ապարդիւն դարձան, վաս նենգութեան միջոցները ձեռք առնուեցան, զոր Եւրոպացի գրիչն ալ՝* ողէոց էրօօօնց օմնէն յօնդօօէն քօնօքօրօօնին *կ'անուանէ* (ԹՕԲ. 66)։ *Աւետիք Թէնեդոսէ Երուսաղէմ՝ ծովագնացութեամբ պիտի երթար, և հետըզհետէ պիտի հանդիպէր Քիոս, Հռոդոս ու Կիպրոս։ Ֆէրիօլ մտածեց այդ ճանապարհու-*

թեան միջոցին նենգութեամբ հափափել տալ Աւետիքը, անոր անձին տիրանալ, և զայն Լատին հաւատաքննութեան ատեանին մատնելով անյայտացնել։ Իր խորհուրդին գործադիր ընտրեց, Քիոս կղզւոյ գաղղիական փոխհիւպատոս Պօնալը (Bonald), իսկ հրահանգր անոր հասցնելու համար ճանպայ հանեց Յիսուսեան միաբաններէն Թարիյօն աբեղան (ԹՕԲ. 68)։ Ապրիլի մէջ կիրակի օր մը, թերևս նոյնիսկ ապրիլ 7 Մարտիրոսի եպիսկոպոսացած օրը, եպարքոսութեան բարապան մը Աւետիքի յանձնեց հըրման ― ղուրուշլեան, պաշտօն ունենալով անոր ընկերանալ և ճանաբարհել մինչ Ռոտոս, իսկ անկէ Երուսաղէմ երթալու համար կ'երևէր թէ բարապանը պիտի փոխուէր։ Քիոսի համար նաւ մը գտնելով, Աւետիք և բարապանը և մէկ փոքրաւոր չորս օրէն հոն հասան, և ցամաք ելան նոր նաւ գտնելու։ Աւետիք միամտօրէն կը գրէ թէ պատրաստ նաւ չկար Հռոդոսի համար և երեք օր սպասեցին (74 ԱՐՐ. 192)։ Սակայն հոն կատարուեցան ամէնէն տգեղ մատնութեան պատրաստութիւնները։ Եւրոպա գացող Գաղղիական նաւը փոխհիւպատոսը ճարեց, նաւապետին հաղորդեց դեսպանի հրահանգները, Թուրք բարապանն ալ կաշառեց, և խեղճ Աւետիք, որ լեզունին չէր գիտեր և բանծնին չէր իմանար, միամիտ վստահութեամբ ինքզինքը անոնց յանձնեց, երեք ոսկի ալ նաւողչէք վճարելով մինչև Հռոդոս։ Քիոսէ մեկնելու օրը ճշդուած չէ, բայց մերձաւորաբար ապրիլի միջին օրերը պիտի ըլլայ։ Գիշերուան ժամը 5'ին, այսինքն կէս գիշերին նաւը ճանպայ կ'ելլայ գաղտագողի, առաւօտուն կը հանդիպի կղզի մը, ջիմ ջիտէր ինչ կ'ասէն՝ կը գրէ Աւետիք, ուսկից պարէն կը հայթայթեն, և միւս օր կը հասնին Տէկիրմէնլիք, որ է Սանթօրինօ կղզին։ Հոն Թուրք բարապանը դուրս կ'ելլայ և այլ չդառնար։ Երկու օր ևս նաւագնացութենէ ետքը, բռնի դուրս կը հանեն Աւետիքի փոքրաւորը, և կղզի մը կը թողուն, և խեղճ Աւետիք առանձին մնացած, կը սկսի մտածել թէ նաւապետը ջէօ ինչ գէօրէ տանէ, ծօվա մի կըյէ՞, կըա ողանէ՞ մի, ճէրէցնէ՞ մի։ Այլևս առանց օգնականի, գերի կ'իյնայ նաւապետին ձեռքը, որ կը խլէ կ'առնէ ա-

նոր ունեցածներն ալ, որոց մէջ նաև ղուռուշ խուշ, և կաշիէ կըղըոխած պարկ մը, որուն մէջ ունէր 188 ոսկի, մէկ ադամանդ և մէկ զմրուխտ մատանի, ծոցի ժամացոյց, 17 ոսկեթել դաստառակ, և 7 ձեռք ճերմակեղէն։ Աւետիք կ'ուզէ բողոքել, աղաչել, սակայն լեզունին չհասկնար, Նէտէ խօսէյին հէտըր, էօ չէլ ֆէնտըր բէ չինէ կ'ասէյն, կոյէ դըլ-ըսիւլ անանման, խեղճ ղանդուանէր է մէջ ծովու մտարանջ լինելով (74 ԱՐՐ. 193)։ Այլ ևս ուրիշ տեղ չեն հանդիպիր մինչև որ կը հասնին Մէսինա քաղաքը (Messina), որ է Ըսպանեօլ, կը գրէ Աւետիք (ՕՕ ԲՆՍ. 143), զի Սիկիլիա՝ Սպանիացւոց տիրապետութեան ներքև կը գտնուէր Փիլիպպոս Ե Պուրպոնի թագաւորութեան օրով։ Մէսինա հասնելնին մերձաւորաբար պէտք է դնել 1705 մայիսին սկիզբները։

**1877.** Մէսինայի մէջ ալ Աւետիքը անձին տէր կանգնողը միշտ Գաղղիական հիւպատոս մը եղաւ, Բօլ Սուլիէ (Paul Soulier) անուն, որ զայն փակել տուաւ հաւատաքննութեան բանտը (74 ԱՐՐ. 72), զոր ինքն Աւետիք՝ Նազարէթ, կամ Լազարէթ (Lazzaretto) կը կարծէ (74 ԱՐՐ. 193), որ է վարակելոց զգուշարան, և մօտնէն զայն ուրիշ ոչ ... հեռու խօսումնէն (74 ԱՐՐ. 72)։ Հինգ ամիս մնաց Աւետիք Մեսինայի հաւատաքննական բանտին մէջ (ՕՕ ԲՆՍ. 143), բայց գործածուած խստութեանց մանրամասնութիւններ պատմուած չեն։ Մէսինա հասնելուն կրցած էր Աւետիք իր վիճակին վրայ լուր հասցնել Կ-Պոլիս, 1706 մայիս 7'ին Մէսինայէ գրուած նամակով մը (ՄԽԻ. 180), և ոչ Ճէնովայէ (Genova ԹՕԲ. 69), ուր բնաւ չեն հանդիպած։ Լուրը տանելու միջնորդն եղած է Սբարթալի անուն Յոյն վաճառական մը (ԹՕԲ. 69), զոր ի դէպ է նոյնացնել Աւետիքի յիշատակարանին մէջ յիշուած Սախըզլը ղօշէրէկեանէն հետ (74 ԱՐՐ. 193), որ է Քիոսցի վաճառական։ Ժամանակն ալ կը յարմարի, զի յունիսի սկիզբները լուր կ'առնեն Կ-Պոլսեցիք Աւետիքի օտարներէն հափափուած ըլլալուն վրայ (ԹՕԲ. 135)։ Այս է նոր պարագայն որ եւաքանգեա կը վտանգէ Քիւլհանճիին դիրքը (§ 1876), որ

Կ-ՊՈԼՍՈՅ ՅՈՒԶՈՒՄՆԵՐԸ

լատինամիտներուն կողմը կը բռնէր, իսկ Լատիններն էին անլուր բռնութեան հեղինակները, և չատ ճչմարտանման էր Մարտիրոսի կամակցութիւնը ենթադրել։ Յանկարծական չարժում մը Աւետիքեանց կողմէն՝ Մարտիրոսը կը տապալէ պատրիարքական աթոռէն, և 1706 յունիս 9'ին, Լուսաւորչի կիրակէին, պատրիարքարանը կը յանձնուի Միքայէլ Խարբերդցի քահանային, աւելի իրր փէշտամալ Աւետիքի (ՕԼ ՕՐԱ. 123), զոր ժողովուրդը միչտ իրր պատրիարք կը ճանչնար, քան թէ իրր բուն պատրիարք։ Անչուչտ Բրիւհանճիին հետ Սարին ալ խափուած է իւր գիրքէն, այլ Երուսաղէմի համար նոր պատրիարքի ընտրութիւն կատարուած չէ, վասնզի Մինաս Համդեցիի 1704 նոյեմբերին վախճանելէն ետքը (§ 1868), մինչեւ 1718 այլեւս Երուսաղէմ յատուկ պատրիարքներ չունեցաւ, այլ Կ-Պոլսոյ պատրիարքութեան հետ միացուած նկատուեցաւ, և Կ-Պոլսոյ գահակալները Երուսաղէմն ալ կառավարէին ուշխարհական փէղակալք և նազըրօք, որոնք փէրաքար քանանայն է վէրայ մաքանոց և ժողովէին ղուրդէանս (ԱՍՏ. Ա. 429)։ Աւետիքի նենգութեամբ բռնուած և բանտարկուած ըլլալուն լուրը ոչ միայն Հայերը գրգռեց, և նոյնիսկ Աւետիքի հակառակ եղողներն ալ ցնցեց, այլ Օսմանեան կառավարութիւնն ալ զայրացուց, և Զօրլուլուն մէկ կողմէն խնդրակներ հանեց զայն գտնելու, և միւս կողմէն սաստիկ սնդումներով և սպառնալիքներով Ֆէրիօլ դեսպանէն պահանջեց Աւետիքը ետ դարձնել, որ միչտ չգիտնալ ձեւացուց, և ամէն բան ուրացաւ, և միչտ ծովահէններու ձեռքն ինկած ըլլալուն մեկնութիւնը կրկնեց, ինչ որ կաչառուած բարապանն ալ բսած էր առաջ, բայց վերջէն տանջանաց ներքեւ ճչմարտութիւնը խոստովանած էր (ԹՕԲ. 100)։ Սակայն ինքն Ֆէրիօլն է որ իւր նամակներուն մէջ կը յայտնէ, թէ վէրջօղէօ չէտէօ բէկլաս, եօ գէնէը Գոզզէօ փանէլ տօսէ, և հրահանգներս տօսէ Քէօսէ ֆօխհէսաղաքօսէն (ՄԽԻ. 213)։ Բայց իբրեւ իրեն չյիշողանք կ'աւելցընէ, թէ Յիսուսեանց միծաւոր հայր Յակինթոսն է, որ գիւ սոփեց, այդ քանաթեան քործը Աւետիքի դէմ ընելու (ԹՕԲ. 67)։ Կը յիչուի ետւ թէ Հայոց երկու դատրէարքները՝ Բրիւհանճին և Սարին, որտօնէ թէօրանը նէփ-ռէլէլ չըթայէ ղուրնօվէցան (ԹՕԲ. 104)։ Ֆէրիօլ ինքն ալ գրած էր, թէ այս դէպքը չափ փէչ է կաթոլիկաց համար, և անոնց դէմ պէտք տուած կ'էրեւի մէծ եպարքոսէն (ԹՕԲ. 103). ինչպէս որ ալ օգտանալիքը կոփարուեցաւ, և կաթոլիկները օտարականէլ վրէժխնդրութեան ենթարկուեցան, խոթթիչերէֆ մը ելաւ, և լատինածէս Հայոց ֆլխաւորները բռնաւելով բանտարկուեցան (ԹՐԲ. 101)։ Համէտականներ բողոքներ կը բարձրացնէին իրենցներուն դէմ եղած հրամաններուն վրայ. սակայն եղելութիւնները կը խօսին, թէ որ կողմն է բուն բռնութեան և անգութ անիրաւութեան մեղապարտութիւնը, և թէ պետական վրէժխնդրութենէ տարբեր բան մը չէին եպարքոսութեան կողմէն հրամայուած կարգադրութիւնները։

**1878**. Կոստանդնուպոլսոյ մէջ պայրացած յուզումները, պէտք յորդորէին Աւետիքի գահիճները՝ զգուչաւորութեան միջոցներ ձեռք առնել, և Մեսինայի մէջ միայն ապահով չնկատելով, անծանօթ տեղ մը փոխադրել։ Աւետիք ինքն ալ լսեր է, որ Կոստանդնուպոլսոյ Ֆրանսա էլչի գէլին այլ քէր և քէբէր բէ ատըրկէցէք ի Ֆրանսա։ Միտք յղացուեր է Սիկիլիոյ Բալէրմօ (Palermo) գլխաւոր քաղաքը փոխադրել, բայց Րօգանէօս Բուջարօրն Փիլիպպոս Ե չէ հաւաներ գահիճի տխուր գերը ստանձնել (74 ԱՐՐ. 194), զոր յօժարակամ ընդունած էր Գաղղիոյ մեծանուն Լուտովիկոս ԺԴ թագաւորը։ Այսպէս 1706 սեպտեմբերին, Ժուֆրօա Սուլիէ (Jouffroy Soulier) նաւապետին հսկողութեամբ, Աւետիք կը փոխադրուի Մարսիլիա (Marseille), ուր հասածին պէս խիկոյն արքունի թիապանը կը բանտարկուի ի ղընդան անօղըրմ՝ փէրէկաց նման (74 ԱՐՐ. 72)։ Ինքն Աւետիք յաւագին չեչտերով կը պատմէ, տօս էմ ղուրէն ֆառնկա երէկաբէ չըթայէ, և կառնօս ֆէօլէնեցէն, ըմօրօս և չէլօխօ օձէլէչէն, մէրկօցաոցէն, և ըմքօցէնալ օսանօղօս և չփէրէէրօ և բըշբէրօ նօսօ օսէն։ Յատկապէս մօրուքին ածիլուելուն կը ծանրանայ, զոր Հայոց ողէն չէն ածէլէր, և իբր կարգազրկութիւն մեկնելով, յոյժ յոյժ դժօարօ էկօօ կ'ըսէ։ Նոյն

ԱՒԵՏԻՔ Ի ԳԱՂՂԻԱ

երեկոյ կը փոխադրին Ներքին բանտն խոր, ուր Ճօցէ կ'ըսէ քառասուն օր ընդմէջն (74 ԱՐՐ· 194)։ Մօնմօր է եղեր բանտին վերակացուին անունը (74 ԱՐՐ· 72), զոր հարկ կը սեպենք յիշել, որ չմոռցուի անյուր բռնութեան գործադիրը։ Կ-Պոլսոյ մէջ կը շարունակէին թէ պետութեան և թէ ազգին յուզումները Աւետիքը գտնելու, և անոր հակառակորդներուն վրայ ծանրանալու։ Թէպէտ Ֆէրիօլ իւր բոլոր զօրութեամբ անգիտութիւն կը յայտարարէր, և ինքն ալ գտնելու համար աշխատութիւններ կը խոստանար, սակայն ձեռքի տակէն 1706 սեպտեմբեր 16'ին կ'աղաչեմ կը գրէր, որ մահն օրհնեալ մը մեջ ... ......, որպէսզի բանտ լոյս չտեսնէ, և բանտ ազատութեան չտեսնէ երբեք (ԹՕՐ· 111)։ Այս լուրերն էին հարկաւ որ Լուդովիկոսի կառավարութիւնը կը յորդորէին Մարսիլիոյ նաւարանին նկուղն ալ բաւական ծածուկ չսեպել, և կ'որոշուէր զայն փոխադրել Գաղղիոյ հիւսիսակողմը Նորմանտիա և Բրիտանիա գաւառներուն սահմանակցութեան վրայ, Ատլանտեան ծովեզերքը՝ ժայռի մը վրայ բարձրացող Ս. Միքայէլի վանքը, Մօն-Սէն-Միշէլ (Mont-Saint-Michel) անուանով ծանօթ Բենեդիկտեանց հռչակաւոր մայրավանքը, որ յետոյ եկեղեցականներու և պետական անձերու բանտարկութեան յատկացուեցաւ։ Աւետիքը կը խաբեն թէ Փարիզ կը տանին անկէ ազատ թողլու համար, և հասարակ աշխարհականի պէս կը հագուեցնեն, ճերմակ բեհեզ, շապիկ, տաբատ, մուճակ, գուլպայ, գոտի, գլխարկ, և նէպի անուն անձի մը և երկու կապիճներու հետ տանց Փարիզ հանդիպելու կը բերեն վերջապէս Ս. Միքայէլի վանքը, և առանձին սենեակի մը մէջ կը փակեն ֆեր-փրիէօր'ին (père prieur), այսինքն է վանքին մեծաւորին հսկողութեան յանձնելով (74 ԱՐՐ· 194)։ Մարսիլիոյ թիարանին քառամսօրեայ բանտարկութիւնն, և Մարսիլիայէ Մօնսէնմիշէլ Գաղղիոյ ամբողջ երկայնքին ուղեւորութիւնը հաշուի առնելով, իրէպ է 1706 դեկտեմբերին սկիզբները դնել այնտեղ համնիլը։ Ինքն ալ երեք տարի կը հաշուէ միշտ նոյն տեղը (00 ԲՆՍ· 143), մինչեւ 1710 յունուար 8 (74 ԱՐՐ· 194), ինչպէս ինքը կը գրէ, և բստ այսմ ամբողջապար հոն անցուցած կ'ըլլայ 1707, 1708 և 1709 տարիները, անծանօթ բոլոր աշխարհէ։ Կ'երեւի թէ Ֆէրիօլի իսկ չէր ծանուցուած Աւետիքի եղած տեղը (ԹՕՐ· 111)։ Այս տեղ ընդհատելով Աւետիքի վրայ գրելիքնիս պիտի անցնինք ուրիշ տեղեր կատարուած իրողութեանց, և յատկապէս հայրապետական աթոռին յաջորդութեան, սակայն անկէ ալ առաջ, մեր սովորութեան համեմատ կ'ուզենք քաղել քանի մը ժամանակակից վկաներուն յիշատակները։

1879. Գողթն գաւառի Շաղկերտ գիւղի տանուտէր Մալխաս, երբոր պարտական կը

**ԿԱՏԱՐԵԱԼ ԳՈՂԹՆԱՑԻ**

միայ գիւղին հաշուէն, գիւղացոց ճնշումէն ազատելու համար Նախիջեւանի իշխան Մէհէմմէտ Ռիզա խանին կը դիմէ, որ իւր կոյս ու գեղանի աղջիկը անոր որդւոյն Մուրթեզաղուլիին տայ, եթէ զինքն գիւղացւոց դէմ պաշտպանէ։ Պայմանադրութիւնը կ'ընդունուի, և այր ու կին Տաճիկ հարսնեւորներ կու գան աղջիկը Երեւան տանիլ։ Կատարեալ, կամ տաճկական կոչմամբ Թամամ, կ'ընդդիմանայ, սակայն օգուտ չունենար, Մերթ է քաջ, Մերթ է յոյս, աղջիկը կը տանին Երեւան, ուր Մուրթեզաղուլին, ուրախութեամբ ոսկով և արծաթով և գեղեցիկ, բայց աղջիկը միտքը կը դնէ մինչեւ վերջը դէմ դնել, Քրիստոսի համար մեռնիլ, քան ուրացութեամբ կեանք ունենալ։ Տունը Հրազդանի ձորին վրայ ըլլալուն, պատուհանէն վար կը նետուի, և ուշաթափութենէն զինքն ժողվելով՝ կամուրջը կ'անցնի, Կարբիի ճամբան կը բռնէ, և հարցնելով և ուղեւորներու հետեւելով Նորագեղի և Կարբիի վրայէն Եղվարդ կը համնի. հոն կը խոստովանի ու կը հաղորդուի կեանքին վտանգը կռահելով, և ճանպան կը շարունակէ, ուրիշ տեղ երթալու։ Ով ըլլալը յայտնուելով, Եղվարդի տանուտէրը Սահակ, իբր թէ Նախիջեւանի իշխանին վրէժխնդրութենէն վախնալով գիւղին իշխանին խորհուրդով, երկու Տաճիկներու հետ ետեւէն կը համնի, զարդերէն կը մերկացնէ, կը կապէ և Տաճիկներէն մէկուն խանջարովը աղջիկը կը խղդէ։ Մալխաս ետեւէն կը համնի, մարմինը գտնել կու տայ, որուն փառաւոր

*յուղարկաւորութիւն կը կատարեն իբր վըկայուհւոյ, և Եղվարդի եկեղեցւոյն բակը կը թաղեն՝ Կատարեալ Գողթնացի կոյսը։ Կատարման թուականն է* 1691. *Քանաքեռցին յատկապէս Եղվարդ երթալով պարագաները ստուգած ու գիրի առած է* (ՁԱՔ. Բ. 128—131)։

**1880.** *Միեւնոյն* 1691 *տարին սեղի ունեցած է Պօղոս Սղերդցի սարկաւագին նահատակութիւնը։*

**ՊՕՂՈՍ ՍՂԵՐԴՑԻ**

*Նեստորական Ասորի մը տաճկացած ըլլալով՝ հանդիսապէս կը բերեն զայն Հայոց եկեղեցին, [illegible], որուն կը հետեւի ամբոխն ալ, և կը սկսին եկեղեցին քարկոծել։ Մուտն ի վերապ տօնն էր, և եկեղեցին լեցուն էր, ժողովուրդը կը յուզուի և կը չփոթի։ Այս միջոցիս Պօղոս, Նորապսակ սարկաւագ, երիտասարդական աշխոյժով դուրս նետուեցաւ, ամբոխը ցրուելու, բայց խառնումի մէջ պատահաբար [illegible] Ասոր վրայ զէնքն կը ձերբակալեն և դատաւորին առեանը կը հանեն, որ ուրացութիւն կ'առաջարկէ մահապարտութենէ ազատելու համար։ Պօղոս դիմադրեց, ուստի [illegible], և վերջապէս ոտուըներէն ցցի մը կապելով և չուրջը փայտ կուտելով այրեցին արիասիրտ սարկաւագը։ Մուտն ի վերապը մարտի* 28'*ին իյնալով, և [illegible] ըսուածը երկու շաբաթի չափ համրելով, զատկի մօտ կրնանք դնել նահատակութեան օրը, որ այն տարի կը հանդիպէր ապրիլ* 12'*ին։ Ոսկրները ժողուելով կը թաղեն Սղերդի եկեղեցւոյն բակը* (ՆՈՐ. 525)։

**1881.** *Ուրիշ նահատակ սարկաւագ մըն է Սարգիս Կարսեցին, աւազանի անունով Սաֆար,* 18 *տարեկան, որ*

**ՍԱՐԳԻՍ ԿԱՐՍԵՑԻ**

*միանգամայն մուշտակի աւետուրը կը շարունակէր։ Օր մը Տաճիկ կարդացողի մը առջեւ դիտողութիւն ըրած ըլլալով իսլամական կրօնքի մասին, անիկայ պատեհ առիթ կը կարծէ սպառնալեօք ձրի ապրանք շորթելու, և Սարգիսի ընդդիմանալուն վրայ կը սկսի աղմուկ հանել թէ մեր կրօնքին հայհոյեց։ Ամբոխը իսկոյն Սարգիսը դատաւորին առջեւ կը հանէ, որ ուրացութիւնը կ'առաջարկէ իբր ազատութեան պայման։ Գործը կուսակալին առեանն ալ կ'ելլայ, և հնար չըլլալով սարկաւագին հաստատամտութիւնը խախտել, քարկոծմամբ կը նահատակեն Հայոց* 1141 *թուին, և որովհետեւ հոկտեմբեր* 15'*ին կը դրուի յիշատակը* (ՆՈՐ. 530), *պէտք է* 1691 *հոկտեմբեր* 15'*ին դնել նահատակութեան օրը, զի Հայոց յիշեալ թուականին ամանորը սեպտեմբեր* 27'*ին կ'իյնար։*

**1882.** *Նիկողայոս Պրուսացի երիտասարդ մըն էր, Այվազեանց տունէն, Աթաճանի և Շուշանի որդի,*

**ՆԻԿՈՂԱՅՈՍ ՊՐՈՒՍԱՑԻ**

*դարբնութեան արհեստով զբաղած Պրուսայի մէջ, Թահթաքալէ Պօղազը չուկան, և* 16 *ամիս առաջ ամուսնացած, և Աննա անունով աղջիկ մը ունեցած։ Ութը տարեկան եղած ատեն հօրմէ որբ մնացած, մօրը Շուշանին խնամքով արհեստ սորված և գործի տէր եղած էր։ Բարետեսիլ պատանի մը ըլլալով, հինգ տարի առաջ՝ այսինքն* 1689'*ին, դրացի Տաճիկ արհեստաւորներէն ուրացութեան առիպումներ կրած էր, որոնք սպառնալիքներ սկսած էին ընել, և գործը փակուած էր՝ [illegible]* (ՆՈՐ. 532)։ *Նոյներ փորձը սկսան կրկնել* 1694'*ին, որոնց այս անգամ խստիւ պատասխանեց Նիկողայոս, և խառնութպաններ սկսան աղաղակել և վկայել թէ մեր առջեւ ուրացած է։ Հակառակ վկայութիւն տուողներ ալ եղան, բայց սուտ վկաներ յարգուեցան, և Նիկողայոս բանտարկուեցաւ, ուր մնաց* 10 *օր, և այդ միջոցին քաղաքին առաջնորդ Սուքիաս եպիսկոպոսէ ղրկուած քահանայի մը ձեռօք խոստովանեցաւ և հաղորդուեցաւ։ Նորէն դատաւորին առեանը հանուեցաւ, և քրիստոնէութեան վրայ անսասան մնալուն՝ գլխատման դատապարտուեցաւ։ Իսկոյն մերկացնելով, և ձեռուըները ետեւ կապուած՝ քաղաքին մէջ պտտցնելով, ձաղանօք գլխատման տեղը տարին։ Ճանպան բարեկամներ և խղճացողներ առ երեսս ուրացութեան կը յորդորէին, մայրն ու մօրաքոյրն ու զոքանչն ալ նոյն առաջարկը կ'ընէին* (ՆՈՐ. 535), *այլ արի երիտասարդը*

*անդրդուելի միայ, և վիզը ներկայեց դահիճին, որ չորս հարուածներէ ետքն ալ չի կարենալով կտրել, տուէլ [illegible] եղէն* (ՆՈՐ. 536)։ *Սուքիաս եպիսկոպոս մարմինը թաղելու հրամանը առաւ, և Հայերու ու Յոյներու անհամար բազմութեամբ թաղեց [illegible],* (ՑԱՍ. Ա. 218)։ *Նահատակութեան օրն եղած է* 1694 *մարտ* 14, *մեծ պահոց չորրորդ չորեքշաբթին* (ՆՈՐ. 537)։

**ԳՐԻԳՈՐ ՋՈՒՂԱՅԵՑԻ**

**1883**. *Ուրիշ երիտասարդ նահատակ մըն ալ է Գրիգոր Ջուղայեցի, Լոյս Գրիգոր մականուանեալ, լոյսի պէս բարետեսիլ կերպարանին համար, և տակաւին* 18 *տարեկան։ Գրիգոր Ասպահանի մէջ Անգղիացի վաճառականի մը մօտ կը ծառայէր։ Օր մը հանդիպմամբ հօրը հագուստին քղանցքը՝ Պարսիկ խանութպանի մը [illegible] կը դպչի, որ իւր ջուրը պղծեց ըսելով դայն [illegible]։ Գրիգոր զայրանալով երկու այլազգի ծառայակիցներու հետ կ'երթայ Պարսիկը ծեծել, և միասին [illegible] Անգղիացւոյն* (ՏՑՌ. Ա. 210)։ *Այսպէս կը սկսի Գրիգորի դէմ անհաշտ թշնամութիւնը, և իսլամական կրօնքի դէմ հայհոյած ըլլալու պատրուակը, զոր դատաւորի վճռով հաստատել կու տան, և ըստ այնմ Գրիգորը Անգղիացիներէն կը պահանջեն, որ տեղական դատարանին յանձնեն։ Անգղիացիք երկու ծեծող այլազգիները կը յանձնեն, իսկ Գրիգորը կը պահեն։ Երբոր գործը մինչև եպարքոսին կ'ելլայ, Գրիգորը կը հեռացնեն, որ Ջուղայի մէջ հօրենական տունը կր պահուըտի։ Այն առեն հայրը կը ձերբակալեն, որ տղուն ուր ըլլալը յայտնէ, և երբ սպառնալիքով չեն կրնար իմանալ, երդմամբ կը վստահացնեն, թէ բան մը հարցնելէ ետքը պիտի թողուն, և հայրը հաւանելով տղը կը գրէ որ յանձնուի, և այսպէս Գրիգոր Պարսիկներուն ձեռքը կ'անցնի* (ՏՑՌ. Ա. 213)։ *Այն ատեն կը սկսին մահուան սպառնալիքներ և ուրացութեան առաջարկներ՝ ազատելու համար։ Ամբոխը եպարքոսին վրայ ալ կը ծանրանայ՝ Գրիգորի մահապարտութիւնը վճռելու, սակայն նա միայն ձաղանքի հրաման կու տայ, և չարչարանքով վարտիքով յանդուգնութեամբ կապուած, քարկոծելով, գանակոծելով և կռուիններ հանելով և [illegible], բոլոր շուկաները կը պտտցնեն։ Կը տանին նաև [illegible] Հայոց, ուր Գրիգոր ամէնքը կը քաջալերէր, վստահացնելով իւր [illegible] միայլուն* (ՏՑՌ. Ա. 216), *և այսպէս կը տանին մինչև [illegible]։ Հոն պարսիկ վաճառականներուն աւագը ողոքանաց միջոցներ կը գործածէ, ուրացեալ Հայերէ ոմանք ալ հայերէն լեզուով կը խրատեն [illegible], բայց նա կը միայ անդրդուելի։ Ամբոխէն մէկը գաւազանով, և ուրիշ մը սուրով կը զարնեն, և բարձրաւանդակէ կը գլորեն, բայց ուրիշներ ազատելով սենեակ մը կը փակեն։ Մոլեգնեալ ժողովուրդը սենեակին դուռը կոտրելով ներս կը խուժէ, և հոն սուրերով և դաշոյններով և բիրերով, վրան կը յարձակին, և [illegible] հոգին կ'աւանդէ արիասիրտ նահատակը* (ՏՑՌ. Ա. 218)։ *Մարմինը Ջուղա տարուելով պատուով կը թաղուի Երևանի թաղին ամարան եկեղեցւոյն մէջ* (ՆՈՐ. 549)։ *Նահատակութեան օրը տապանագիրին մէջ նշանակուած է* 1704 *յուլիս* 3'*ին, Ներսէսի և Խաթայ տօնին օրը* (ՏՑՌ. Ա. 220), *որ ճշդիւ կը պատասխանէ հին տոմարին, երբ այն տօնը կը կատարուէր Հոգեգալստեան չորրորդ երկուշաբթին, մինչ այժմ Սիմէոնեան տօնացոյցով փոխադրուած է Հոգեգալստեան երկրորդ շաբաթ օրը. և անիմանալի կը միայ թէ ինչու հրատարակողներ* 1703 *յուլիս* 20 *գրած են* (ՏՑՌ. Ա. 219)։

# Տ. ԱՂԵՔՍԱՆԴՐ Ա. ՋՈՒՂԱՅԵՑԻ

**1884**. *Էջմիածինի մէջ 1705 յունիս 13'էն ի վեր դատարկ էր հայրապետական աթոռը* (§ 1872)*: Անշուշտ հետամուտ էին ամէնքն ալ նոր կաթողիկոսի ընտրութեան, թէպէտ չենք կրնար վրճռաբար ճշդել դէմերնին ելած դժուարութիւնները, և անոնք հարթելու համար կատարուած բանակցութիւնները: Գրեթէ յանկարծ աթոռ բարձրացած կը տեսնենք Աղեքսանդր Ջուղայեցին, Ս. Ամենափրկիչի առաջնորդը և Պարսկաստանի մետրապոլիտը, նոյն ինքն որ Ստեփաննոս Ջուղայեցիի կողմէ իբրև յառաջընթաց Էջմիածին եկած էր նահապետ կաթողիկոսը վտարելու* (§ 1834)*: Աղեքսանդրի կաթողիկոսական օծումը 1706 դեկտեմբեր 7'ին կը դրուի* (ՇԱՀ. Ա. 224)*, բայց կանուխէն որոշուած և լսուած և ընդունուած պիտի ըլլայ ընտրութիւնը, զի 1706 դեկտեմբեր 20'ին Կ-Պոլսոյ Հայոց գլխաւորները Աղեքսանդրի ուղղուած նամակ մը կը գրեն, և միայն 13 օրերու միջոցը բաւական չէր, որ եղելութեան լուրը Կ-Պոլիս հասնէր, և Կ-Պոլսեցիք կարենային այնպիսի ընդարձակ գրուած մը պատրաստել, որուն ներքև 448 անձերու կնիքներն են դրուած* (01 ՕՐԱ. 123)*: Թէ ժամանակին չփոթութիւնները, և թէ Հայութեան զանազան մասերուն մէջ տիրող երկպառակութիւնները, յորդորած են անշուշտ Ջուղայեցւոց խումբը, որ որչափ ալ յաջողած են իրենց ընտրելին յաղթանակել տալ և Էջմիածինի վարչութիւնն իրենց ձեռքը անցընել, բայց չեն ուզած օծման նուիրագործութիւնը փութացնել, այլ ամէն բաժիններու, և գլխաւորապէս Կ-Պոլսոյ պատրիարքարանի ալ հաւանութիւնը ընդունիլ: Հետևաբար մենք կը միտինք դեկտեմբերէ երկու ամիս չափ առաջ 1706 սեպտեմբերին ընտրական տագնապը լրացած և կաթողիկոսը որոշուած ընդունիլ, և միայն օծումը մինչև դեկտեմբեր 7'ը յապաղած: Այս մեր տեսութիւնը կը հաստատուի ուրիշ մանուոր գրութենէ մը, ուր 1706 սեպտեմբեր 18'ին կը դրուի Աղեքսանդրի* ի սուրբ աթոռն Էջմիածին ի կաթողիկոսութեան գնալու *թուականը* (ՏՑՈ. Բ. 48)*: Աղեքսանդրի անձը թէպէտ և ոչ բոլորովին անծանօթ, սակայն և ոչ բոլոր մանրամասնութիւններով ծանօթ է: Նա զինքն* Կոստանդնէ որդէ *կը կոչէ, և յաջորդն է այն նշանաւոր և բանիբուն վարդապետներու, որոնք Խաչատուր Կեսարացիէ սկսելով պայծառացան իրենց արժանիքով և պայծառացուցին Ջուղայի աթոռը: Սիմէոն, Դաւիթ և Ստեփաննոս Ջուղայեցիներէ ետքը, 1699 յունուար 20'ին յաջորդած է Աղեքսանդր* (ՏՑՈ. Բ. 48)*, Ստեփաննոսի դառնալէ մահուան տարելիցէն ետքը՝ պաշտօնապէս անունը սահմանելով, իսկ անկէ առաջ իբր տեղապահ վարած է պաշտօնը այն օրէն, որ Ստեփաննոս իբր կաթողիկոս Էջմիածին գնաց* (§ 1834)*: Աղեքսանդր թէ հմուտ անձ մը եղած է, և թէ բուռն պաշտպան հայադաւան ուղղափառութեան, ինչպէս կը վկայէ իւր գրած երկասիրութիւնը,* Գիրք աղենական, որ ասի վիճաբանական*, զոր պատրաստած է 1682'ին* (ՂԱՋ. 108)*, և տպագրուած է Նոր-Ջուղա 1687'ին, իւր վարդապետութեան ատեն* (ՂԱՋ. 107)*, և որուն երկրորդ տպագրութիւնն ալ կատարուած է Կ-Պոլիս, դար մը ետքը 1783'ին* (ՂԱՋ. 109)*: Այդ գիրքին մէջ Աղեքսանդր նախ հինգ գլուխներով հերքած է ընութեանց խնդիրին մասին քաղկեդոնական դրութիւնը, և միւս հինգ գլուխներով ալ պաշտպանած է Հայ եկեղեցւոյ վարդապետութիւնը, բաժակի ջուրին, քիրդւոյ յաւելուածին, քաւարանին, սահմանական դատաստանին, և պապութեան մասին՝ լատինական վարդապետութեանց դէմ* (ՂԱՋ. 108)*:* Աղօթամատոյց *գրքոյկ մըն ալ պատրաստած է 1687'ին, բայց միայն 1790'ին հրատարակուած է* (ՂԱՋ. 110)*: Այդ գրուածները, աւելի քան որևէ ուրիշ ենթադրութիւն, բաւական են ճշդութեամբ ցուցնել Աղեքսանդրի հաստատուն*

և անխրկղիմի հայադաւան ուղղութիւնը։

**1885.** Առաջին գործը որով տագնապեցաւ զբաղիլ Աղեքսանդր, Կ-Պոլսոյ պատրիարքութեան խառնակ և

**Կ-ՊՈԼՍՈՅ ԴԻՄՈՒՄԸ**

կնճռոտած կացութիւնն էր, Աւետիքի հափափումէն ետքը, երբ Քիւլհանճին ալ տապալեցաւ, և Միքայէլ երէց պատրիարքանի վարիչ նշանակուեցաւ (§ 1877). սակայն ոչ ազգը խաղաղեցաւ, և ոչ գործերը կարգադրուեցան։ Կ-Պոլսեցիք շատոնց ղադարած էին Էջմիածնէ սպասել իրենց գործերուն կարգադրութիւնը, վասնզի ոչ միայն հեռաւոր էին, այլ տարբեր պետութեան ներքեւ գտնուելով՝ չէին կրնար Օսմանեան կառավարութեան գործերուն միջամտել։ Բայց այս անգամ տագնապեցան Աղեքսանդրի դիմել, գլխաւոր առիթ առնելով Յովհաննէս Զմիւռնիացիին Էջմիածին գտնուելէն, որ Աւետիքի առաջին գահընկէցութեան առթիւ փախած (§ 1865), և չունչը Էջմիածին էր առած։ Կ-Պոլսեցիք զայն կ'ուզէին, իբրեւ Աւետիքի հոգւոյն և ուղղութեան հետեւող, և անոր բացակայութեան առեն՝ անոր անունով պատրիարքութիւնը վարելու յարմարագոյն անձ մը։ Միւս կողմէն կրօնական խնդիրը տակաւ կը զայրանար, և Հայեր կ'ուզէին իրենց նպաստաւոր վճիռ մը ունենալ Մայրաթոռի հեղինակութեամբ տրուած, որպէսզի անով զօրացած կարենան մաքառիլ, լատինամիտներուն դէմ, որ Ֆէրիօլի պաշտպանութեամբ ամէն տեսակ բռնութիւններ և անիրաւութիւններ կ'ընէին և ընել կու տային, և որոց պատկն էր եղած Աւետիքի անձին դէմ գործածուած հաւատաքննական անգթութիւնը։ Այդ գրութեան պատճէնը հրատարակուած ունինք (63 ԿՈՆ. 663—683), որ կը սկսի երկար և ամենափառաւոր գովեստներով Աղեքսանդր կաթողիկոսին անձին և Հայաստանեայց եկեղեցւոյն, և գրողներ ինքզինքնին կը դաւանին լուսաւորչածին և քրիստոսադաւան ուղղափառ հաւատացեալներ։ Գրութեան թուականն է 1706 դեկտեմբեր 20 (63 ԿՈՆ. 682), և կաթողիկութեան մուտ գտնելուն սկիզբը 17 տարի առաջ կը դնեն, Խաչատուր Կիւմիւշխանացի վարդապետին ձեռքով, զոր Խաչաբաց կը կոչեն (63 ԿՈՆ. 668)։ Աղթարմաներուն կը վերագրեն տասնէ աւելի մոլար և անտեղի գործեր, և կը պատմեն Նփրեմի պատրիարքութեան օրէն եղածները, երկարելով Աւետիքի վրայ, և մանրամասնօրէն պատմելով յափշտակութեան պարագաները, և անկէ ետքի դէպքերը։ Կը գանգատին Էջմիածինի նուիրակներուն թոյլ ընթացքին վրայ, և կը խնդրեն որ խօճէմաց աստուածութեան վարդապետացը երկուսը և կամ երէքը ըրկէ իբր քննիչ, և Իզմիրցի Յովհաննէս վարդապետն ալ անոնց հետ, որ էկէալ մէմուրէօյէ՝ Ժողով ատէն (63 ԿՈՆ. 677)։ Կը խնդրեն նաեւ որ պապին գրելով պահանջէ Աւետիքի ազատութիւնը, և տպագրութեանց վրայ խօսելով՝ Գրիգոր դպիրին վրայ պաշտպանութիւն կը հրաւիրեն Տուզախեցի Ղազար քահանային դէմ, զոր օտաբան և խաբեբայ կը կոչեն, որ և բազում չարս հասոյց այս Գրէգոր դպրին. և կը փակեն խնդրելով որ կապէ և անիծէ յանուանէ ըսմնայն հերձուածողն։ Այդ նպատակով անուանական ցուցակ մը կը կցեն ծանօթ աղթարմաներու, թաղերու վրայ բաժնելով, և զատելով բուն աղթարմաները, և աղթարմա չըլլալով Աւետիքի կորստեան համար անոնց հետ միացողները, որոց գլուխը կը դնեն Մատթէոս Սարին և Մարտիրոս Քիւլհանճեան, որ բանդի են ի քէօրէն (63 ԿՈՆ. 681)։ Ցուցակները քիչ մը շփոթ են, բայց առաջին թուարկութեամբ, 175 անուններ կը գտնենք։ Գումքարուէն 6 քահանայ, 27 աշխարհական, 3 կին, և 5 միացող. Սամաթիայէ 7 քահանայ, որոց առաջինը՝ Քէօմուրճի օղլի Կոմիտաս երէցն (63 ԿՈՆ. 680), 23 աշխարհական, 14 կին, և 12 միացող. Գալաթէն 10 վարդապետ, 8 քահանայ, 3 աշխարհական, և 7 կին։ Ստորագրութեանց մէջ առաջինն է Միքայէլ Խարբերդցի երէցը վէքիլ վէհին, այսինքն պատրիարքական տեղակալ Աւետիքի, երկու վարդապետներ՝ Յովհաննէս և Խաչատուր, և 448 կնիքներ, որոց մի քանիսը տանիլ ստորագրութիւններ կան (63 ԿՈՆ. 683)։ Աղեքսանդր նամակը առածին պէս Յովհաննէս Զմիւռնիացին փութացուց Կ-Պոլիս երթալ (01 ՕՐԱ. 124), և միանգամայն գրեց է Կոստանդնուպոլիս մեծ վէզիրին Օսմանցւոց, թէ ես Հայոց ազգին ֆէթվա տուողն եմ, և դուք էք ժողովուրդք՝ Ռոմանոսէլ ու կա-

մն ինչ, և եվէլու են կրծնից մերոց, ահա էփոո ֆեՐվոյ, չէ պոտմէցէք այս անուն և այս անուն, Բոււվ էԽրէս 175 կամ 200 անձինս, որք ֆրանկ են եղէնլ Հայքս (ՏՑՌ. Բ. 47)։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԶՄԻՒՌՆԱՑԻՆ**

**1886**. *Մինչև որ Աղեքսանդրէ սպասուած պատասխանը գար, կամ մինչև որ Զմիւռնացին համնէր, Միքայէլ նրէցին վարչականութիւնը չրաւեց պահանջուած գործունէութիւնը ունենալ, և Սահակ Ապուչեխցի վարդապետ յաջողեցաւ իրեն գրաւել ազգին մէջ ազդեցիկ խումբի մը վստահութիւնը, և Միքայէլը հեռացնել տալով, ինքն նստաւ պատրիարքական աթոռը 1707 յունուար 22'ին (ՄՐԳ.), որով միայն 7 ամիս տեւած եղաւ Միքայէլի պատրիարքութիւնը կամ տեղապահութիւնը։ Սահակ բնաւորութեամբ հանդարտաբարոյ և ուղղութեամբը խաղաղասէր անձ մը նկատուած է, բայց ոչ բնաւ իր եկեղեցւոյն համար տկար և իր դաւանութեան համար վարանոտ, այլ աշխատած է հնարաւոր միջոցներով փոթորկեալ կացութիւնը մեղմացնել։ Իրեն ձեռնտու ունեցած է Աստուածատուր Ջուղայեցի վարդապետը, մականուանեալ Աղանի, որ նուիրակ եկած էր Աղեքսանդր կաթողիկոսի հրամանով, և յատուկ հրահանգներ ստացած տպագրական ձեռնարկները քաջալերել, ինչպէս կը հաստատեն զանազան գիրքեր այս միջոցին Կ-Պոլսոյ տպարաններէն ելած (ՕՐԱ. 124), որոնցմէ չորս հատ կը յիշուին (ՕՐԱ. 125)։ Սակայն Սահակի ընթացքը չարաչար մեկնուելով, սկսած էր քաջալերել կաթոլիկացեալները, և իրենց առաջնորդող Լատինները, և իրենց հովանաւոր դեսպանը, ինչ որ չէր կրնար դիւր գալ ազգին ընդհանրութեան, և իրենց եկեղեցւոյն հաւատարիմ դասակարգին, որոնք չէին կրնար տկալ իրենց վարդապետութեան և ծէսին և սովորութեանց դէմ արձակուած անհիմն նախատինքներուն, և ազգին մէջ ցանուած անջատական սերմերուն, մանաւանդ երբ հայրապետական վճռով ալ հաստատուեցան իրենց զգացումները։ Ասոնք եղան չարժաուիթները՝ որ Սահակի պատրիարքական պաշտօնն ալ երկարատեւ չկրցաւ ըլլալ, և պարտաւորուեցաւ տեղի տալ յայտնուած բուռն զգացումներուն ութն ամիս պաշտօնավարելէ ետքը, և 1707 սեպտեմբեր 26'ին, պատրիարք հաստատուեցաւ Յովհաննէս Զմիւռնիացին (ՄՐԳ.), զոր այնչափ փափաքով փնտռած էր ազգը՝ կաթողիկոսին ուղղած խնդրագրովը (§ 1885), և որուն ընթացքին և ուղղութեանը քաջածանօթ էր (§ 1863), ու միակ յարմարագոյնը կը նկատէր՝ Աւետիքի անձին վրայ կատարուած անիրաւութեան և բռնութեան վրէժը լուծելու։ Յովհաննէսի պատրիարքութեան անցնիլը ձախողուած մըն էր կաթոլիկամիտ Հայերուն համար. բայց աւելի Ֆէրիօլի և իրեն գործակից ու գործիք եղող Լատին աբեղաներուն, որոց մէջ կը գերազանցէին Յիսուսեան միաբանները։ Ասոնք իրենց ձեռնարկը վտանգուած տեսնելով՝ սկսան պահանջներ ստակացնել իրենց համամիտներուն վրայ, ստիպելով որ «Ու եսս ֆնայէն յեկեղեցին Հայոց, այլ յեկեղեցին Լատինաց»։ Հռոմէականք այդ եղբայրասպանաց կռիւը և նախանեաց դէմ հաւատարաց անարգանքը արդարացնելու համար կը գրեն, թէ «փողոկոցեալ բաժանեցան եղոռ ի ժողովրդենէ Հայոց». սակայն սուտ ալ խոստովանած կ'ըլլան թէ իրենք են իրենց դարաւոր և հայրենաւանդ եկեղեցիէ բաժնուողները. ընդունած կ'ըլլան նաև թէ այս պատճառով «անկոռ ոփելոռնեւն մեծ ազգին մէջ, և ծագեցան կոփ և կռիւ, նախոփին և Բշնամանք անձնուրէն Հայութեան մէջ» (ՉԱՄ. Գ. 750)։ Մէկ խօսքով ստիպեալ կը խոստովանին թէ իրենք և իրենց հրապուրիչներն եղած են՝ ազգին մէջ տեղի ունեցած աղէտներու և արկածներու բուն պատճառներն ու պատասխանատուները։*

**ՏԱՍՆԵՐՈՒՆ ԴԱՏԱՍՏԱՆԸ**

**1887**. *Այդ պարագաներուն մէջ պաշտօնի անցած Զմիւռնիացին, թէ իւր բնական միտումին ուժգնութեամբ, թէ կաթողիկոսէն ստացած հրահանգին քաջալերութեամբ, և թէ ժողովրդական յուզման և զայրացման ստիպմամբ, անմիջապէս ձեռնարկեց չփոթութիւնները լռեցնել և աւրթ տուողները զսպել։ Բայց ոչ եւս հետապնդեց այն 200 կամ 175 անձերը, որոնք յիշուած էին Աղեքսանդրի ուղղուած նամակին մէջ (§ 1885), այլ միայն 40 հոգիներու ցուցակ մը կազ-*

որ կանոնական թերութիւն մը եղած կ՚ըլլար։ Իսկ գլուխն ու մարմինը Գաղղիական գեսպանին ձեռքով Գաղղիա յղուած ըլլալն (ՉԱՄ. Գ. 755) հաստատուն վկայութիւն մը չունի, և Գաղղիոյ մէջ ալ տեղ մը պահուած չցուցուիր։ Կոմիտասի գերեզմանը եղած է Պալըգլըի Հայ գերեզմանատան մէջ, պատուոյ տեղը, Կիլիկիոյ Թորոս կաթողիկոսին շիրմին մօտ, և յարգանօք կը պահուի մինչեւ ցայսօր, և երբեք խափանուած չէ ուխտերու ներկայութիւնը ստուգելու համար։

**ՄԻՔԱՅԷԼ ԲՐԳՆԻԿՑԻ**

**1890.** Կոմիտասի նահատակութենէ քիչ օր առաջ լուր հասած էր Կ-Պոլիս թէ Միքայէլ Բրգնիկցի քահանան կախաղանի վրայ նահատակուած էր Սեբաստիոյ մէջ։ Այդ եղելութեան ալ առիթ տուած էին տեղական երկպառակութիւնները, որոնց Միքայէլ իբր գրգռիչ ամբաստանուած, և կրօնափոխութեամբ ազատիլ յանձնառու չէր եղած։ Ինքն ծննդեամբ Խարբերդցի էր, բայց Բրգնիկ գիւղի մէջ մեծցած և քահանայացած։ Նոր կիրակիին նախընթաց օրը, 1707 ապրիլ 19՚ին երեք Հայեր ձերբակալուած էին Սեբաստիա՝ ֆրանկութեան ամբաստանութեամբ, որոնց երեք եւս աւելցան հարցաքննութեան ատեն, Միքայէլ քահանան ալ յիշուեցաւ իբրեւ խառնակութիւն տարածող։ Ապրիլ 20՚ին նա ալ ձերբակալուեցաւ և 21 օր բանտարկութենէ ետքը մահուան վճիռ տրուեցաւ, ուրացութեան հրաւիրուեցաւ, և չհաւանելուն վճիռ գործադրուեցաւ։ Թուականը 1707 մայիս 11 չորեքշաբթի օր գրուած է (ԲՐԳ.), բայց չորեքշաբթի օր մայիս 10՚ին կը հանդիպի։ Միքայէլ քահանան Բրգնիկ գիւղին կաթոլիկութեան իբր սկզբնապատճառ նկատուած է։ Ինչպէս Կոմիտասի համար բսինք, Միքայէլին ալ արկածները և ոմանց ալ ուրացութիւնը՝ Լատիններուն յարուցած անխոհեմ գրգռմանց հետեւանքներն են, որոնց մէջ իրենք իրր օտարազգի և օտարահպատակ ձախող հետեւանքներէ զերծ կը մնային, և իրենց հետեւողները փորձանքներու մատնել չէին խղճեր, որ չենք կարծեր թէ ուղղամիտ ընթացք մը ըլլայ։

**ՀԱՆԴԱՐՏ ՄԻՋՈՑ**

**1891.** Ինչպէս բնական փոթորիկներ, նոյնպէս և քաղաքական և հանրային յուզումներ՝ տեւական վիճակ չեն ունենար, և ինչպէս յանկարծ կը բորբոքին, այնպէս ալ շուտով կը հանդարտին։ Մատթէոս Սարիի և իրեն իշխաններուն և վերջին երկուքներուն ուրացութիւնը, և Կոմիտաս ու Միքայէլ քահանաներու գլխապարտութիւնը, ազդեցութիւն ունեցան ժողովուրդին վրայ, որ պահ մը կանգ առաւ իւր գայրոյթին մէջ։ Կառավարութիւնն ալ յարմար չտեսաւ աւելի յառաջ վարել բռնութեամբ զսպելու ոճը. Զօրլուլուն ինքն ալ պահ մը դադար տուաւ իւր օտարատեաց զգացումներուն, և համոզուիլ ցուցուց այն պատասխաններուն, զորս Լուտովիկոս ԺԴ թագաւորը Օսմանեան կառավարութեան կը յղէր Խօճէօ-Բէօնը յէօ+ օօնէլըմ, և խոստանալով Սղօ-Նէօյ և Իօօլէօյ Վէ՛ ֆնօօէլ տալ Աւետիքը, որ իրեն ձեռքին տակ և իւր հրամանով Ս. Միքայէլի վանքին մէջ բանտարկուած կը հեծէր (ԹՕԲ. 114)։ Անոնք որ զանազան պատճառներով բանտարկուած և աքսորուած կամ թիարան փակուած էին, կրցան դրամի և տուգանքի զօրութեամբ ազատութիւննին գտնել, ասոնց մէջ Կարապետ Ճամճեան քահանան ալ, որ առաջին անգամ Կոմիտասի հետ ձերբակալուած էր (§ 1887)։ Կարծես թէ հանրութիւնն ալ յոգնած էր տեւական յուզումներէն, և Չմշկածագցիէն տարբեր խաղաղասէր և հեզաբար գործող պատրիարքի մը պէտքը կը զգար։ Ըստ այսմ նա ալ ստիպուեցաւ տեղի տալ, և 1708 դեկտեմբեր 30՚ին, նորէն Սահակ Ապուչեխցին պատրիարքութեան բարձրացաւ (ՍՐԳ.), իւր վկայեալ հանդարտաբարոյութեան համար։ Յովհաննէս Չմշկածագցիին պատրիարքութիւնը, պատահարներով նշանաւոր, բայց լոկ 15 ամիս տեւողութիւն կրցած է ունենալ։ Ինքն արդէն տարեց էր, որով չատեւս ապրած պիտի ըլլայ՝ պատրիարքութենէ իջնելէն ետքը, թէպէտ որոշ յիշատակ չենք գտներ իւր վախճանին վրայ։ Ժամանակին տիրող զգացումներուն նշանն է նոյնպէս Սահակ Ապուչեխցիին երկրորդ պատրիարքութեան 5 տարիէ աւելի տե-

*ւելը, որ նկատի առնելով տիրող յուզումները և պատրիարքական արագ արագ փոփոխութիւնները, շատ նշանաւոր եղելութիւն մը պէտք է նկատուի։ Այդ հանգարտութեան միջոցին կ'ուզենք օգտուիլ մենք ալ, և կոստանդնուպոլսէ դուրս կատարուած իրողութիւնները քաղել, պատմական անցքերուն համընթացութիւնը պահելու համար։*

**1892.** *Մխիթար Սեբաստացին թողուցինք Զանթէ կղզւոյն մէջ* (§ 1860), *ուր հանդիպմամբ ինկած էր* 1702 *հոկտեմբերին անձապարանօք Զմիւռնիայէ հեռանալուն առթիւ, և ստիպուած մնաց այնտեղ մինչեւ* 1703 *փետրուար* (Մխի. 176), *մինչեւ որ ինչ ընելիքը որոշէր։ Իրեն հետեւողներէն ոմանք ինկած էին Նաւպլիա, որ է Նէապոլիս Հոռոմոց, Պելոպոնէսի արեւելակողմը համանուն ծոցին մէջ, և հոն հրաւիրեցին Մխիթարը, որ գալէն ետքը նախադասեց Մեթոն կամ Մոտոն հաստատուիլ, Պելոպոնէսի արեւմտակողմը, Մեսէնիա գաւառին ծայրը՝ ծովեզերեայ բերդաքաղաքը, ուր հանդիպած ալ էր Զանթայէ եկած ատենը։ Վենետիկի հանրապետութեան պաշտօնեաներ հաւանեցան իրեն բնակավայր տալ, և կալուածական հողեր ալ շնորհել, եթէ մինչեւ երեք տարի կարենայ կանոնաւոր վանք մը կազմակերպել։ Այս պայմաններով Մխիթար Մեթոն փոխադրուեցաւ* 1703 *տարւոյ ամառուան մէջ, իրեն հետեւող* 15 *անձերով,* 4 *աբեղայ և* 11 *դպիր, և հաստատուեցաւ ընդարձակ տան մը մէջ զոր Վենետկեցիք շնորհեցին։ Մխիթարի այս տեղ կազմած վանական ձեւը, տակաւին հայկական կերպարանին ներքեւ էր, ինչպէս ինքն ալ կը յայտարարէր թէ ըստ ձեւոյն Հայոց* (Մխի. 190), *զի սովորական էր Հայոց մէջ՝ իւրաքանչիւր վարդապետի աշակերտութիւն մը կազմել և վանք մը շինցընել։ Բայց որովհետեւ Լատին պետութեան մը հովանաւորութեան ներքեւ մտած էր, պարտաւոր էր քիչուշատ անոնց սովորական ձեւերուն մօտենալ, որոնց առաջինն էր միաբանական կանոնի մը հիմը։ Ըստ այսմ առաջին անգամ իտալերէն լեզուով պատրաստուած գրութեան մը մէջ, որ յայտնապէս Լատին եկեղեցական իշխանութեանց համար գրուած ըլլալը կը ցուցնէ, Կանոնաց Սուրբ Անտոն Աբբային յիշատակութիւնը կը տեսնուի* (Մխի. 182)։ *Արդ Ս. Անտոնի անունով կանոններ Հայոց մէջ ծանօթ չէին, որչափ ալ Մխիթար այնպէս հաւատացնել ուզած ըլլայ Լատիններուն* (Մխի. 190), *ուստի Կանոնաց Ս. Անտոն Աբբային յիշատակութիւնը պէտք է միացնել՝ Լիբանան քաշուելու իր նախնական գաղափարին հետ* (§ 1860), *ուր իրօք Ս. Անտոնի անունով և Ս. Անտոնի կանոնով կազմակերպուած էր Մարոնի վանականութիւնը, և տակաւին այս ձեւն էր որ Մխիթարի միտքը գրաւած էր։ Բայց Մեթոնի բնակութիւնը, Վենետկեան հովանաւորութիւնը, և Լատիններու շփումը տակաւ հեռացուցին զինքն Արեւելքի մէջ մնալու և գործելու դիտաւորութենէն, և լատինական պաշտպանութիւնը ապահովելու հետեւեցաւ։ Այդ միտքով երկու տարի անցնելէն ետքը,* 1705'*ին Հռոմ Կղեմէս ԺԱ. պապին երկու աբեղաներ ղրկեց, պաշտօնական յայտարարութեամբ մը՝ իր դաւանութեան և վանականութեան վրայ։ Պատուիրակները տարւոյն վերջերը՝ հոկտեմբերին մէջ Հռոմ հասան, և որչափ ալ Վենետիկի դեսպանէն պաշտպանուեցան, սակայն Մեթոնի մէջ հաւաքուած խումբին՝ դաւանութեան և կազմակերպութեան տեղեկութիւնները կասկածներու և քննութիւններու տեղի տուին* (Մխի. 193), *և* 1706'*ին պատուիրակներէն մին՝ Եղիա վարդապետ ձեռնունայն Մեթոն դարձաւ, իսկ միւսը՝ Յովհաննէս վարդապետ Հռոմ մնաց իտալերէն և լատիներէն ուսանելու* (Մխի. 194), *և դիմումները շարունակելու համար։ Ճիշդ այդ միջոցին էր որ* 1706 *ապրիլին Աւետիք հափշտակուած և և գերուած այդ ծովեզերքէն կ'անցնէր* (§ 1876)։ *Աւետիքը տանող նաւին Մեթոն հանդիպած ըլլալն ալ կը յիշուի* (Մխի. 180), *բայց ոչ Աւետիք գիտցած է թէ Մխիթար հոն է, և ոչ Մխիթար իմացած է թէ Աւետիք անցորդ նաւին մէջն է։ Հռոմէադաւան գրիչ մըն ալ կը գտնէ այդ զուգադիպութիւնը, և անորակելի զգացմամբ մը կը ներբողէ Ֆէրիօլի անարդարանալի գործը* (Մխի. 214), *և կը յանդգնի գնահատուած նեն-*

գութեանց գործակից և անիրաւութեանց հովանաւոր ցուցնել։

**ՄԽԻԹԱՐԻ ԳՈՐԾԵՐԸ**

1893. *Մխիթարի տրուած եռամեայ պայմանաժամը լրանալու մօտ էր, և վանք շինելու պայմանը պէտք էր գործադրել, ուստի ստիպողաբար 1706 մարտին շինութեան ձեռնարկեց (ՄԽԻ. 199), և հոկտեմբերին աւարտեց, և նոյեմբերին բնակելու գործածեց, թէպէտ շինութեան ծախքը պարտք կը կը մնար, զի ակնկալուած նպաստները գտնուած չէին կամ կորած էին։ Մխիթար անձուկ վիճակի մէջ անցուց հետեւեալ տարիները Մեթոնի մէջ, և հազիւ պզտիկ յաջողութիւններէ քաջալերուած 1708 մարտին Հայ եկեղեցիի մը հիմնարկութիւնն ըրաւ (ՄԽԻ. 206), որպէսզի լատին եկեղեցին յաճախել ազատին, կամ աղօթարանի փոխուած սենեակով չմնան։ Եկեղեցին եօթը ամիսէ, այսինքն հոկտեմբերին մէջ կրցաւ կիսովի ծածկել և առժամեայ կերպով գործածել, բայց անոր վերջնական աւարտը մինչեւ 1711 ուշացաւ, երբ վանքին պակասներն ալ լրացան (ՄԽԻ. 209), և վանական միաբանութեան ձեւ առաւ Մխիթարի շուրջը հաւաքուած աշակերտութիւնը։ Մինչեւ այն ատեններ Մխիթար իր հայկական և արեւելեան ձեւերը պահելու փափաքը կը տածէր, սակայն վերջապէս համոզուեցաւ թէ Արեւելքէն հեռացած և Հայութենէ բաժնուած էր, և այլեւս այն կողմէն նպաստ և օգնութիւն չէր կրնար յուսալ։ Քանի տարի էր որ Լատին հովանաւորութեան ներքեւ կ'ապրէր քաղաքականապէս, ուստի ուզեց եկեղեցական պաշտպանութիւնն ալ յարակցել, այլ դիւրաւ չի յաջողեցաւ, զի Հռոմ միշտ կասկածանօք կը նայէր տակաւին հայեցի ինքնութեան նշանները պահելու աշխատող Մխիթարին վրայ։ Պէտք էր որ նա անպայման Լատին ձեւերուն համակերպէր, զի նոյն իսկ Ս. Անտոնի կանոններուն անունն ալ խնդիրի նիւթ էր դարձած, և լատինական կանոններու յանձնառութիւնը կը պահանջուէր։ Հռոմ գտնուող Յովհաննէս վարդապետ, որ տարիներէ ի վեր հոն կը սպասէր, անհրաժեշտ պայմանը զգացուց, և Մխիթար վերջապէս հաւանեցաւ Ս. Բենեդիկտոսի կանոններուն ընդունելութեան, և Հռոմի կամքին բացարձակ հպատակութեան։ Այս կերպով միայն կրցաւ ստանալ Հռոմի օրհնութիւնը, որուն լուրը 1712'ին Մեթոն բերաւ Յովհաննէս վարդապետը։ Յանձնառութեան պաշտօնական ձեւ տալու համար, նոյն 1712 սեպտեմբերին, Մխիթար և իրեն հետ եղողներ, Կորնթոսի Լատին արքեպիսկոպոսին առջեւ հաւատոյ դաւանութիւն և վանական ուխտադրութիւն ըրին (ՄԽԻ. 240), և այն ատեն Մխիթարի աշակերտութիւնը՝ իբրեւ վանական միաբանութիւն ճանչցուեցաւ, լատինական կանոնով և կաթոլիկ դաւանութեամբ։ Մխիթարի աշակերտութեան ասկէ առաջ ունեցած վիճակը անպաշտօն բան մըն էր, իրենց կամքով իրարու հետ ապրող խումբ մըն էր, որ ոչ Հայ եկեղեցւոյ իշխանութեան կը հպատակէր, և ոչ Լատին եկեղեցւոյ պետէն ճանչցուած էր, ուստի աւելի ճիշդ պիտի ըլլար 1712 սեպտեմբերէ հաշուել Մխիթարեան վանականութեան կամ միաբանութեան պաշտօնական սկզբնաւորութիւնը։ Բենեդիկտեանց կանոնադրութեան հիմամբ, Մխիթարի պաշտօնական կոչումն ալ Հայկական ձեւերը մերկանալով, լատինական «Աբբահայր» տիտղոսին փոխուեցաւ, որ շարունակ գործածութեամբ մակդիր անուն դարձաւ։ Այս կէտէն ուրեմն պէտք է հաշուել Մխիթարի հայադաւան ուղղափառ եկեղեցիէն պաշտօնապէս և վերջնապէս խզումը, թէպէտ կարծես թէ սիրտին խորքէն չկրցաւ քանդել ու քանցել հայրենաւանդ եկեղեցւոյն իղձերը, և իր գործունէութեան մէջէն արմատախիլ ընել հայկական ձեւերը։ Այս պատճառով ալ մինչեւ կեանքին վերջը անպակաս եղան իր դիմէն՝ կեղծ հռոմէադաւան և ներքնապէս հայադաւան մնացած ըլլալու ամբաստանութիւնները, որոնք առէջ և շատ յոգնութիւն պատճառեցին կաթոլիկ ըլլալը հաւաստցնելու համար։*

**ԱՆՏՈՆԵԱՆՑ ՍԿԻԶԲԸ**

1894. *Մխիթար Սեբաստացիի Կ-Պոլիսէ փախուստը պատմած ատեններս յիշեցինք Բերիայի Մուրատեան եղբայրներու կողմէն յղուած՝ Լիբանանի մէջ Հայկաթոլիկ միաբանութիւն մը կազմելու մտադրութիւնը (§ 1860)։ Այ-*

բահամ, չորս եղբայրներուն երիցագոյնը, Լիբանանի մէջ 1702ին չրջագայութիւն մը կատարելով՝ Բերիա դարձած էր, և չորսերն ալ միեւնոյն խորհուրդը որոճալով, վերջնական որոշումնին տուած էին 1707ին Աւետման օրը, որ ապրիլ 7ին կը տօնուէր։ Անկէ ետքը ձեռնարկած էին իրենց առաքելական գործը վերջացնել, որ քաղուելիք գումարներով կրօնաւորական հաստատութիւնը հիմնեն, բայց չէին կրցած այդ նպատակը իրականացնել։ Զի նոյն տարին Բերիոյ մէջ ալ հռոմէականաց վրայ խստութիւններ կը գործածուէին Պետրոս Բերիացիի ձեռքով (ԱՆՏ.), որ Սսոյ հակաթոռ կաթողիկոսն էր (§ 1856), և Յովհաննէս Զմիւռնիացիի Կոստանդնուպոլսոյ մէջ բռնած ընթացքին կը հետեւէր (§ 1837)։ Չորս եղբայրներէն երկու միջինները, Յովհաննէս և Յակոբ, Ս. Եղիսէի վանքը կը մտնէին Ապտալլահի ձեռքին տակ վանականութեան աշակերտելու, կրտսերը Մինաս առաքելական կարգադրութեան համար Սուրիոյ Տրիպոլիսը կ՚երթար, իսկ Աբրահամ Լիբանան կը դառնար՝ ապահով տեղ մը ճարելու, ուր կաբենային վանք հաստատել։ Օտարազգի և օտարալեզու ըլլալնին, և Հայերուն ընդհանրապէս կաթոլիկ չըլլալը, և ուրիշ նմանօրինակ պարագաներ՝ իբր դժուարութիւն առարկուեցան Մարոնիներու կողմէ, և նոյն իսկ Յակոբ Աւուատ՝ Մարոնի պատրիարքը չգիջաւ խնդրուած արտօնութիւնը տալ, մինչեւ որ Ապտալլահ Ղարաալի վանահօր և Սախռ Խազինեան իշխանին վկայութիւնները յաջողեցան կասկածները փարատել։ Խազինեան իշխանը՝ իր սեփականութիւնն եղող, Քեսրուան գաւառի մէջ, Ընդիլիաս գետին ձորամէջը, Աֆքար կոչուած առանձնացեալ բլուրին վրայ շինուած տնակը, անոնց իբրեւ վանք յատկացուց 1709ին, տեղական և եկեղեցական իշխանութեանց հաւանութեամբ։ Այդ տարիներուն էր որ Մխիթար ալ Մեթոնի մէջ յատուկ վանքի շինութեամբ կը զբաղէր (§ 1893)։ Մուրատեան եղբայրներ, հազիւ քանի մը տարի մնացին այս տեղ, զի ապստամբներու երեսէն պարտաւորուեցան խոյս տալ և ապաւինիլ Քիւրքի գիւղը։ Առաջին տեղերնին այլեւս անապահով կը նկատուէր, ուստի Խազինեան Սախռ իշխանաւորը, իր սեփականութիւններէն Ղոստա գիւղի մօտերը Քրէյմ կոչուած պզտիկ ագարակը՝ մէջի տունովը նուիրեց անոնց (ԱՆՏ.), որուն հաստատուն վանքի ձեւ տուին 1716ին, և տէր դարձան մարտ 3ին իրենց յանձնուած վաւերագիրին զօրութեամբ։ Եւ որովհետեւ Մարոնիներու մէջ և անոնց հետեւողութեամբ միաբանութիւն մը կը կազմէին, Անտոնեան կոչումն ալ վրանին առին։ Իրենց սկզբնական նպատակը պարզ վանականութիւն եղած կ՚երեւի, վասնզի այսպէս ալ կը բացատրեն իրենց միտքը, թէ ուզած են չինել մին ֆոտր անաղատ (ԱՆՏ.), որ է առանձնացեալ վանք։ Արդէն Լիբանանի լեռներուն առանձնութիւնն ալ տարբեր նպատակի չէր կրնար ծառայել։ Նոյն էր Մխիթար Սեբաստացիի Մեթոնի մէջ սկսած ձեռնարկն ալ, զի Մեթոն ալ Լիբանանի նման ուսումնական զարգացման դիւրութիւն ընծայող տեղ մը չէր։

**1895.** Այդ երկու կրօնաւորական միաբանութեանց սկզբնաւորութիւնները, Մխիթարեանը Արեւմուտքի և Անտոնեանը Արեւելքի մէջ, նախաքայլեր էին, Լատին քարոզիչներու ձեռքով և Գաղղիացի դեսպաններու պաշտպանութեամբ մուտ գտնող լատինամտութիւնը՝ կազմակերպեալ կաթոլիկութեան վերածելու, հռոմէադաւան սկզբանց և տեսութեանց կատարելապէս համակերպելու, և պապական իշխանութեան հպատակելու. բայց տակաւին ներքին կերպով միայն, զի պաշտօնապէս Հայ պատրիարքարանի իշխանութեան ներքեւ կը մնային Օսմանեան սահմաններուն մէջ։ Այս երկու ազդակներուն հետ երրորդ մըն ալ հետզհետէ կը զօրանար և գործունեայ կը դառնար, և այս նպատակին կը ծառայէին Հռոմի եկեղեցական վարժարաններուն մէջ դաստիարակուած Հայ երիտասարդներ, որոնք հռոմէականութեան սկզբունքներով տոգորուած և եկեղեցական կոչում առած, Հայ ժողովուրդին մէջ կը մտնէին իբր ազգային եկեղեցւոյ պաշտօնեաներ, և ճարտար կերպերով կը սողսկէին հաւատացելոց միտքերը պղտորել։ Այդ խումբէն յառաջինթաց մը յիշեցինք՝

ՄԵԼՔՈՆ - ԹԱՍՊԱՍԵԱՆ

Խաչատուր Առաքելեան Կարնեցի վարդապետը, որ տակաւին իր գործունէութիւնը կը շարունակէր մայրաքաղաքի մէջ, և անոր աշակերտ մըն ալ կը հետեւէր անոր, Մելքոն Թասպասեան Տամպուտցի վարդապետը, նա ալ Հռոմի Փրոփականտային մէջ կրթուած և ուսած էր, և իր հայրենիքը դառնալէն ետքը՝ Հայ վարդապետներու նման աշակերտներ կը հաւաքէր իր շուրջը, իր առած ուղղութեամբ ուսուցանելու, որոնց մէջ նշանաւոր եղաւ Աբրահամ Արծիւեան Այնթապցին (ԱՂՔ. Գ. 9)։ Ասոնք չէին խորշիր իրր Հայ եկեղեցւոյ պաշտօնեաներ նկատուիլ, որպէսզի յաջողին ժողովուրդին մէջ սողոսկիլ, և Թասպասեան 1908'ին Բերիոյ մէջ (ԱՂՔ. Գ. 11) եպիսկոպոսական աստիճան առացած էր՝ Պետրոս Բերիացիէ, Պիծակ մականուանեալ արդէն յիշուած Կիլիկիոյ հակաթոռ կաթողիկոսէն, որ հռոմէականներէ իրր կաթոլիկներու հալածիչ նկատուած է (§ 1894)։ Կան որ Պիծակը իբր լատինասէր միտում ունեցող կը ներկայեն (ԱՂՔ. Գ. 11), սակայն ամէն առթի մէջ պաշտօնապէս հայադաւան եկեղեցւոյ պաշտօնեայ էր, և անոր ուղղութիւնը կը պահէր, զի և ոչ իսկ յանձն կ'առնէր Քաղկեդոնի և Լեւոնի նզովքը զեղչել ձեռնադրութեան ատեն, թէպէտ ոմանք տարբեր դարձուածներ գործածուած կ'ըսեն (ԴԻԹ. 24)։ Պետրոսի համար գիտենք, թէ հայադաւան եկեղեցւոյ ծոցը մեռած է Երուսաղէմի մէջ (09 ՕՐԱ. 284), և անհիմն է ոմանց կարծելը թէ Պարսկաստան աքսորուած և հոն մեռած ըլլայ (ԴԻԹ. 33), քանի որ Պարսկաստան Օսմանեան իշխանութիւն ներքեւ երկիր չէր։ Մելքոն հայադաւան դրութեամբ Տամպուտի վիճակին եպիսկոպոս ձեռնադրուած էր, բայց եպիսկոպոսութիւնը ձեռք անցընելէն ետքը, սկսաւ ամենուրեք համարձակ լատինամոլ գործունէութեան հետեւիլ, և մենք զինքը պիտի տեսնանք Կ-Պոլիս եկած, և այնտեղ լատինամիտ կուսակցութեան գլուխ կանգնած, մինչեւ իսկ չարժումներ առեղծելու ձեռնարկած, չի ինէն կէչէ ատամըզը և դատրիմիզ, զանէ է վէրայ էտէրէ ատամիզնէ (ՁԱՄ. Գ. 758)։ Արդէն քանիցս դիտել տուած ենք, թէ լատինամիտութիւնն ալ կուսակցական մրցումները և փառասէրնչ ձգտումները ծածկելու ծառայող պատրուակ մըն էր։

**1896.** Թասպասեանի հետեւողութեամբ գործունեայ դեր ունենալ ձեռնարկած էր անոր ձեռնասուններէն Աբրահամ Արծիւեան վարդապետը, 1679'ին ծնած Այնթապ (ԴԻԹ. 9), և 1706'ին աբեղայ ձեռնադրուած (ԴԻԹ. 17), և Թասպասեանի նման Պետրոս Բերիացիէ եպիսկոպոսական աստիճան առացած 1710'ին Բերիոյ մէջ (ԴԻԹ. 25)։ Աբրահամի Պետրոսէ ձեռնադրութիւն ընդունելուն իբր պատճառ ցուցնել, իբր թէ Պետրոս ի ծածուկ ասղըֆռա էյէ (ԱՂՔ. Ա. 10), Հռոմի համար կարկատուած բարբարանք մըն է, զի այդ վարդապետները անխտիր որեւէ աթոռէ եպիսկոպոսութիւն կ'ընդունէին։ Իսկ Աբրահամի Պետրոսէ ձեռնադրուիլը շատ բնական էր, զի բնիկ Այնթապցի էր, և Տամպուտցի վարդապետին աշակերտ, և իբր Բերիոյ առաջնորդ կ'ընդունէր ձեռնադրութիւնը (ԱՆՏ.), նոյն իսկ Բերիոյ մէջ (ԱՂՔ. Ա. 10), ուր կը նստէր հակաթոռ Պետրոս Պիծակը։ Ժամանակակից եղելութեանց յարակցութիւնը չկորսնցնելու համար պարտաւորուած ենք տեղէ տեղ ոստումներով յառաջ բերել մտադրութեան արժանի դէպքերը։

**ԱԲՐԱՀԱՄ ԱՐԾԻՒԵԱՆ**

**1897.** Լատին քարոզիչներուն Թուրքիոյ զանազան կողմերը յառաջ բերած յուզումները, և անոնցմէ յառաջ եկած երկպառակութիւններն ու թշնամութիւնները, և այս պատճառով տեղի ունեցած աղետալի դէպքերը, Աղեքսանդր կաթողիկոսի մտադրութիւնը հրաւիրեցին։ Գործնականապէս միջամտելու և զսպելու միջոցներ ու դիւրութիւններ չունենալով, մտածեց նոյնիսկ անոնց սկզբնապատճառն եղող պապական աթոռին դիմել, և անկէ պահանջել յիշեալ զայթակղութեանց դադարումը։ Այդ նպատակով 1709 փետրուար 25 թուականով գիր մը ուղղեց (ՏՑՈ. Բ. 16) յուֆնադարէ և ֆէրահլըգ դուասըն մէճարէսըն՝ դէվլէթլէրին ժամանէյէլէյ ֆահին Հասմայ, փէսանտ Գըլէմէնտոսէ էրէնցի էրմէնին դոդէ (ՏՑՈ. Բ. 38), որ է Կղեմէս ԺԱ. պապը, ժամանակին աղետալից գործերուն դրդիչը։ Աղեքսանդր այս նա-

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՆԱՄԱԿԸ**

մակով կը խոստովանի թէ «Ես վերջացեալ գտանիմ այսմ ժամանակի ի մարմնոյ իշխանութենէ», և աննախանձաբար կը յաւելու թէ «չիքն տեսանելով զատուցեալ բերկրիմ ի սիրտ և ի հոգի», և կ'ընդունի ալ թէ աւետարանին համաձայն է որ հոգևոր իշխանութիւններ կարենան «տարօրս առնել ի չորեքծագեան տեղիս» (ՏՑՈ. Բ. 39)։ Սակայն պապէն ղրկուած քարոզիչներուն գալով կը դիտէ, թէ «տարօրդն այնոքիկ ոչ գործեն աչխոր լինել առ մեզ, այլ առաքել առ այնոսիկ՝ որք ոչ կարգան զանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի» (ՏՑՈ. Բ. 43), և կ'անարգեն քրիստոնէական վարդապետութիւնները, և նախատինքներ կը կուտեն քրիստոնէութեան վրայ։ Մինչ պապին ղրկած քարոզները «այս ամենայն տեսանելով և լսելով՝ ոչինչ համարին, և ոչ ցաւ է նոցա, այլ անփոյթ առնելով զնոցանէ, զհետ մկրտութեան պղծութեանց, արկանելով ի մեզ քրիստոնէիցս աղմուկ խռովութեան, և փոխանակ շինութեան և հաստատութեան արկանեն յաւելեալ բաժանութիւնս» (ՏՑՈ. Բ. 44)։ Այդ ընթացքին հանդէպ կը յիշէ, թէ երկրին պետութիւնը, որ «այլազգ է և ոչ դաւանեայ քրիստոնէութեան, գթով գթայ և նախախնամեալ գոհանայ զմեզ թուրց զօրանաց, քան թէ մեզ եկեալ գործեն ոչ այսպէս, այլ ներհակն վարին ընդ մեզ»։ Ուստի կ'առաջարկէ որ «նոցա թողդ առնել ի չնո մեր, և մեք ցուցցուք գործոց, բերեալ կամեցին յաւելութենէ քրիստոնէից»։ Իսկ եթէ, կ'ըսէ, «միաբանութիւն ոք խնդրէ հեռաւորաց դաւանողաց, եղիցի կամ վեհաբանութեանց, սակայն ուրացողն անսաստ տեսանել ոչ է վայելուչ այնպիսի իրականութիւն» (ՏՑՈ. Բ. 45)։ Այս այն նամակն է, որ հռոմէականներուն գրիչին տակ «սէր սիրոյ և յորդանոց» եղած է, ընդունելով «զհռոմայ հայրապետն լինել փոխանորդ Քրիստոսի և յաջորդ Պետրոսի Վէմի», և թէ Աղեքսանդր, որ կանուխ պապութեան դէմ գրած էր (§ 1884), կաթոլիկութենէ տարբեր «ի բաց եդեալ զառաջին ընդդիմութիւն իւր» (ՉԱՄ. Գ. 749)։ Սակայն այսպիսի բացատրութիւն մը չգտնուիր Աղեքսանդրի թուղթին մէջ։ Հայ եկեղեցւոյ ճշմարիտ քրիստոնէութիւնը հաստատելու համար դաւանութեան ամփոփում մը գրած է, բայց ոչ պապութեան, և ոչ երկու բնութեան յիշատակութիւն կայ անոր մէջ, և Հոգւոյն Սրբոյ համար, չեշտելով կը կրկնէ. «Բղխումն ի Հօրէ անճառելի և անժամանակ» (ՏՑՈ. Բ. 40), և «Բղխումն մշտնջենաւոր առ ի Հօրէ» (ՏՑՈ. Բ. 41)։ Սակայն հռոմէականներուն համար բաւական է որ մէկ քանի քաղաքավարութեան նպատակով գրուած պատուագիր բառեր տեսնան, որ անմիջապէս գրողը հռոմէադաւան հռչակեն, չկարենալով թերեւս ըմբռնել, թէ հնար է հակառակորդի հետ ալ վայելուչ լեզու գործածել առանց նզովից և անիծից, ինչ որ սովորոյթ մըն է Հայ եկեղեցւոյ ներողամիտ ուղղութեան։

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

**1898.** Աղեքսանդրի նամակին հետեւանքն ինչ եղած է՝ գրուած չէ, բայց եղելութիւններ կը ցուցնեն թէ արդիւնք ունեցած չէ։ Հայերէն նամակը թարգմանած է հայերէնագէտ Յակոբ Վիլլօթ Յիսուսեան կրօնաւորը, և անոր վկայութեան վրայ կը պնդեն հռոմէականք, թէ Աղեքսանդրի նամակը «Հռովմէական և ուղղափառական էր իւրեանց միտքով», այսինքն կաթոլիկական, և «ոչ դիմադրական»։ սակայն իրենք ալ կը խոստովանին թէ Վիլլօթ «թարգմանեաց ըստ հարազատ իմացուածոյ» (ՉԱՄ. Գ. 750), որով խարդախողը իբր վկայ ընդունած կ'ըլլան, հակառակ նամակին բնագիր պատճէնին՝ որ մէջտեղն է։ Վիլլօթ, որ ծանօթ է հայերէն բառարանովը և ուրիշ գրուածներով, 1688'ին չփոթութեանց առթիւ չահ Սիւլէյմանի հրամանով Պարսկաստանէ վտարուած Լատիններէն էր, որ չկարենալով ուրիշ կերպով Հայոց դէմ հակառակութիւնը յագեցնել, փոքրիկ տետրակ մը հրատարակեց Ստեփանոսի և Աղեքսանդրի դէմ, որուն մէջ Աղեքսանդրի՝ կաթոլիկութեան առնել հռոմէականներու դէմ ըրածները կը թուէ։ Ինչ ինչ պարագաներ ալ կը յիշէ, թէ Աղեքսանդր «եհար տալ զանուն Քաբուչինոց», այսինքն Վեղարաւոր Փրանկիսկեանց, «որ ի Թարվէզ», թէ Լատիններուն մօտ ուսման գացող տղոց ակնարկելով ըսած է Թարվէզի Հայերուն, թէ «անձեռ տղայքն չէր տանէ և տայ ի ծծել զտէնդ ուսոց», թէ Օսմանցոց եպարքոսին գրած է կաթոլիկները պատժել (§ 1825), թէ այս պատճառաւ շատեր թիապարտութեան մատնուած են, կամ ի «ավեր» և «տանջանաց» մեռած

են, և հաշուոց անյինո փախստական ցրուած է, թէ Թարվէզ և Շամախի և Գանձայ և Թիֆլիզ քաղաքները տակնուվրայ ըրած է, և թէ ինք Վիլլօթ ալ անոր պատճառով տակաւին պանդուխտ կը շրջի Պարսկաստանէ դուրս (ՏՑՈ. Բ. 47)։ Այդ մեղադրանքներ, և Վիլլօթի կողմանէ եղած ամբաստանութիւններ, ինչ ալ ըլլայ անոնց իսկութիւնը, գոնէ պիտի հաստատէին՝ թէ Աղեքսանդր շատ հեռու էր կաթոլիկներու համամիտ և անոնց կողմը ըլլալէ։ Ցիշուած պարագաներ յայտնի կը ցուցնեն, թէ ինչ վերապահութեամբ ընդունելու է հռոմէական պատմիչներուն գնահատումները։

1899. Զանազան դէպքեր մեր աչքէն հեռացուցին խօսիլ Օրիի մեծ ձեռնարկը, որ էր Հայոց ազատագրութիւնը Եւրոպիոյ միջամտութեան շնորհիւ։ Իւր մտածած կերպերուն ապարդիւն մնալովը, և Ռուսաց Պետրոս Մեծ կայսեր մօտ ըրած միջնորդութիւններուն իրական օգուտ չունենալը, զինքը ստիպած էին 1704 փետրուար 10'ին Մոսկուայէ մեկնիլ դէպի Տիւսսէլտորֆ, թէ իւր ընտանիքին տեսութեան և թէ Ցովհան-Գուլիէլմոս կայսրընտիրին խորհուրդները լսելու, որ Օրիին պաշտպան էր կանգնած (§ 1846)։ Օրին թէպէտ Ռուսական երկարաձգումներէ ձանձրացած, սակայն քաջալերիչ նշաններ ունէր Հայաստանի կողմէն։ Աղուանից Սիմէոն կաթողիկոսը 1701'ին, և անկէ առաջ Երեմիա կաթողիկոս 1700'ին մեռած էին, և 1702'ին Եսայի Հասան Ջալալեանց Աղուանից կաթողիկոսական աթոռը գրաւած էր բաժանումը վերջացնելով, թէպէտ առանց Էջմիածինի գիտութեան։ Բայց վերջէն հաշտուած և Նահապետ կաթողիկոսէ հաստատութիւն առած էր (ՋԱՄ. 81)։ Եսայի համարձակօրէն Օրիի ծրագիրին պաշտպան կանգնեցաւ և մելիքներուն ալ քաջալերութիւն տուող եղաւ, Անգեղակոթի մէջ հաւաքուած մելիքները (§ 1835) իւր գլուխը ժողվեց Գանձասարի մէջ, ուր Օրիի հրահանգ տրուեցաւ իրենց հաշուոյն ծախքեր ընել (ԼէՕ. Բ. 259)։ Հետեւաբար Օրի գոնէ այդ կողմէն վստահութեամբ մը Եւրոպա կը մեկնէր (§ 1846)։ Զարմանալի է որ Եսայի կաթողիկոս, որ Պօղոսեան Համազասպ Աղուանից Երէցն մը թողած է, բնաւ Օրիի և անոր ձեռնարկին ակնարկ մը չունի իւր գրուածին մէջ։ Օրի Մոսկուայէ մեկնելով Վիէննայի մէջ կայսրընտիրին հետ տեսակցեցաւ, Լէոփոլտ կայսեր ալ տեղեկութիւն տուաւ, բայց Եւրոպական պատերազմներուն վիճակը չէր ներեր կայսեր՝ ուրիշ գործով զբաղիլ, և կայսրընտիրն ու Օրի՝ Տիւսէլտօրֆ անցան, և այնտեղէն յատուկ դիմումներով Կղեմէս ԺԱ պապը համոզեցին, որ Պարսից շահին նամակ մը ուղղէ քրիստոնէից պաշտպանութեան համար, և նամակը Օրիին յանձնուեցաւ տանիլ (ԼէՕ. Բ. 260), որ այս կերպով պաշտօնական հանգամանքով Պարսկաստան պիտի մտնար, և կարեւոր հետազօտութիւնները պիտի կատարէր։ Օրի հոգաց նոր զէնքեր գնել Հոլանտիոյ մէջ 400 Հայեր զինելու չափ, որոնք Ռուսական արշաւանքին յառաջընթաց պիտի երթային, իբրեւ երկրին հմուտներ, և ինքն ալ կը պատրաստուէր Վիէննայէ մեկնիլ 1705'ին։ Մայիս 7'ին Լէոփոլտ Ա մեռաւ, և Ցովսէփ Ա յաջորդեց, և պէտք եղաւ զայն տրամադրել Հայերուն հովանաւորելու (ԼէՕ. Բ. 261)։ Օրին 1706 հոկտեմբերին, այսինքն է իբր տարիուկէս ետքը նորէն Մոսկուա կը գտնենք, ուր յիսունէ աւելի հետեւորդներէ շքախումբ մը կը կազմէ, ամենայն ճոխութեամբ պատրաստուած, և Պետրոս Մեծէ ալ յանձնարարական առնելով, պապական դեսպանէ աւելի Ռուսական դեսպանի կերպարանք կու տայ իւր ձեռնարկին։ Ամէն ազգէ և ամէն աստիճանէ անձեր կ'առնէր նա իրեն հետ, և մինչեւ իսկ Վրաց արքայորդին մէկտեղ առնել մտածեց, բայց Ռուսաց կայսեր հաւանութիւնը չստացաւ։ Մոսկուայէ մեկնեցաւ 1707 յունիսին, հոն թողլով Մինաս վարդապետը թղթակցութեանց և յարաբերութեանց համար, բայց Շամախի քաղաքը ստիպուեցաւ կանգ առնել։ Պարսից կառավարութիւնը կասկածներու մատնուեցաւ անսովոր և անակնկալ դեսպանութեան մասին. Շամախիի կուսակալը չարունակ արգելքներ կը հանէր՝ Ասպահանէ հրահանգի սպասելով, բայց հրահանգը չէր գար, զի Շահ Հիւսէյինի տկարամիտ կառավարութիւնը՝ ընդունելու կը վարանէր, դիմադրե-

**ՕՐԻ ԴԵՍՊԱՆ**

*լու կը վախնար։ Անվերջանալի ձգձգումներէ ետքը, և մօտաւորաբար Մոսկուայէ մեկնելէն երկու տարի ետքը, Օրի Շամախիէ կը մեկնէր, Էջմիածին կը հանդիպէր, Աղեքսանդր կաթողիկոսի օրհնութիւնը կ'առնէր, և այնպէս կը շարունակէր իւր ճանպան։ Աղեքսանդրի մէկ նամակը կայ Պետրոս Մեծ կայսեր ուղղուած 1709 յուլիս 7'ին գրուած, որուն մէջ Օրիի Պարսկաստան մեկնիլը կը ծանուցանէ, պաշտօնին պատիւը լաւ պահելը կը վկայէ, և կայսեր շնորհակալու օրհնութիւններ կը մատուցանէ* (ԼէՕ· Բ· 267) *Հայոց ազգին վրայ ցուցած հոգածութեան համար։ Այդ նամակը 4 ամիս միայն ետքն է պապին ուղղած նամակէն* (§ 1897), *որուն մէջ կը գովէր և կը բարձրացնէր Պարսիկ վեհապետին քրիստոնէից մասին ցուցած խնամքը* (ՏՑՈ· Բ· 45). *սակայն պէտք չէ որ ոմանց պէս հետեւցնենք թէ կաթողիկոսը հակառակ էր Օրիի ծրագրին* (ԼէՕ· Ա· 446), *զի անոր բուն միտքը պապին ընթացքը հակապատկերով մը յանդիմանել էր։ Ապաթէոչ նոյնիսկ Պետրոսի օրհնագիր յղելը իւր զգացումները կը յայտնէ, որ այսպիսի խորհուրդներու չէր հակառակեր, բաւական էր որ դաւանափոխութեան պայմանի կապուած չըլլային, ինչպէս Նահապետ ալ կը մտածէր* (§ 1846)։

**1900**· *Օրիի դեսպանութեան արդիւնքը և Պարսկաստանի մէջ տեղի ունեցած պաշտօնական եղելութիւնները պարզաբանուած չեն*

**ՕՐԻԻ ՄԱՀԸ**

*մեզի հասած գրութեանց մէջ։ Շուրջ 1709 յունիսին Շամախիէ մեկնող Օրին, նոյն տարւոյ սեպտեմբեր 20'ին Շամախի դարձած կը գտնենք* (ԼէՕ· Բ· 269), *միայն երեք ամսոյ միջոց մը, ճանպորդութիւններն ալ մէջը ըլլալով, որ կը ցուցնէ թէ Պարսիկները շտապած են օր մը առաջ դեսպանը ետ դարձնել։ Արդէն Օրին ալ կատարելու յատուկ գործ մը չունէր, մէկ մը խելն կարեւորութիւնը պիտի աճեցնէր, մէկ մըն ալ տեղւոյն վրայ Պարսկաստանի նկատմամբ ճիշդ տեղեկութիւններ պիտի հաւաքէր, ինչ որ կրցած էր Շամախի մնացած ատենն ալ ընել։ Իբր դեսպանութեան նպատակ ցուցուած էր քրիստոնէից պաշտպանութիւնը, և Շահ Հիւսէյին յատուկ գրով մը կը պատասխանէ Զար Պետրոսի, որ թէպէտ քրիստոնէից մէջ կան այնպիսիներ, որ* [illegible] *սակայն, կ'ըսէ, ձեր բարեկամութեան համար,* [illegible] (ԼէՕ· Բ· 268)։ *Յայտնի չէ թէ որոնց կ'ուզէ ակնարկել այդ խրոխտ բացատրութիւններով. մեզի բաւական է տեսնել, որ իրօք քրիստոնէից պաշտպանութեան շուրջը դարձած է Օրիի դեսպանութեան պաշտօնական նիւթը, և թէ իբր Ռուսական դեսպան նկատուած է, և պապին կողմէն ունեցած դեսպանութիւնը նկատի առնուած չէ։ Օրիի կը վերագրուի այդ առթիւ յարաբերութեան մտած ըլլալ ուրացեալ Վրացի Գորգին խանի հետ, որ Աֆղաններուն երկրին մէջ բռնաւոր կուսակալ մըն էր* (ԼէՕ· Բ· 279)։ *Բայց Գորգինէ աւելի Օրիի ներկայութենէն օգուտ քաղեցին Աֆղանները, որոնց պետը Միրվէյս՝ Աֆղաններուն ապստամբութիւնը կազմակերպեց, և անոր որդին Մահմուտ՝ Պարսից շահ եղաւ Հիւսէյինը տապալելով։ Օրի, Պարսկաստանէ դառնալուն, Շամախիէ լուր տուած էր Պետրոսի՝ Աֆղաններուն շարժումին մասին, իսկ ինքն Շամախի մնալ ստիպուած էր, սպասելով որ Ռուսաց կողմէ նաւեր հասնին, որոնցմով Կասպից ծովէն փոխադրէ մետաքսագործ 20 Հայ ընտանիքները, և Պետրոսի ընծայ 25 ձիերը, իւր հետեւորդները, և Աղուանից Եսայի պատրիարքը, որ յանձնառու եղած էր անձամբ Ռուսաց կայսեր ներկայանալով ազատագրութեան գործին աշխատակցիլ։ Նաւեր բաւական չհասան, և հարկ եղաւ մի մասը ցամաքով ճանպայ հանել։ Օրիի գտնուած նաւն ալ փոթորիկէ ցամաք ինկաւ և քայքայեցաւ, և Օրի Նիզօվօ ձմերելու պարտաւորուեցաւ, և հազիւ թէ 1711 ամառուան սկիզբը զայն Աստրախան հասած կը գտնենք։ Օրի ժամանակը անգործ չանցուց, և շարունակ Ռուսներուն տեղեկութիւններ հասուց Օսմանցող շարժումներուն վրայ, որոնք Ռուսաց դէմ պատերազմի կը պատրաստուէին Պալթաճի Մէհէմմէտ եպարքո-*

*սին հրամանատարութեամբ։ Պատերազմը Բրութի դաշնադրութեամբ փակուեցաւ, և Պետրոս անձամբ մեծ վտանգէ մը ազատեցաւ* (ԺՈՒ.324)։ *Օրի երբ այդ ծառայութիւնները կը մատուցանէր, պարտաւորուած էր իրեն դէմ կայսեր մօտ եղած ամբաստանութիւնները ցրել, և իւր գործին արգելք հանողներուն դէմ մաքառիլ։ Այդ պարագաներուն մէջ, իւր կեանքը կը կնքէ Աստրախանի մէջ* 1711 *օգոստոսին, դեռ մերձաւորաբար յիսնամեայ ժիրաժիր տարիքին մէջ, անշուշտ ծանր հիւանդութեան մը հետեւանօք։ Յուղարկաւորութեան կը նախագահէ Եսայի Աղուանից կաթողիկոսը, ամփոփելով մարմինը Հայոց եկեղեցւոյն բակին մէջ, թէպէտ այժմ այլեւս հետքը չի տեսնուիր։ Եսայի առանց Օրիի՝ բան մը ընելու անբաւական գտնուելով, կը պարտաւորուի Գանձասար դառնալ* (ԼԵՕ.Բ.274)։

**ԳՈՐԾԻՆ ԳՆԱՀԱՏՈՒՄԸ**

**1901.** *Իսրայէլ Օրի, ինքնատիպ և չահագրգիռ դէմք մըն է դարուս պատմութեան մէջ, որուն մասին սակայն ժամանակակից ազգային յիշատակարաններ բնաւ բան մը չեն պատմեր, և վերջին ժամանակներու պատմութեան գիրքեր և ձեռնարկներ պատրաստողներն ալ լռած են անոր մասին։ Եթէ առաջինները քաղաքական կասկածներով չեն խօսած, վերջիններն ալ տեղեկութիւն չունենալնուն խօսելու առիթ չեն ունեցած։ Օտար դիւաններու մէջ գտնուած թղթակցութիւններ առիթ ընծայեցին մոռացութեան գերեզմանէն յարուցանել մոռցուած Օրին, և գլխաւորապէս Կարապետ Եզեանց՝ բանասէր պաշտօնակալին կը պարտինք, որ* 1898'*ին բաւական հատորով մը հրատարակեց պետական դիւաններէ քաղուած* 300 *կտորէ աւելի նամակներ և գրուածներ իրենց բնագրական լեզուներով։ Իսրայէլ Օրիի վաղահաս վախճանը իրեն չներեց արդիւնաւոր հետեւանքի մը հասցնել իւր ձեռնարկը, որուն վրայ* 1680'*էն* 1711 *երեսուն տարիներ անխոնջ աշխատեցաւ, միշտ իրեն դիմաց ունենալով այնպիսի դժուարութիւններ, որոնք ամէնէն հաստատամիտ գործիչներն ալ կրնային ձեռնթափ ընել։ Սակայն Օրի հեղինակն ու սաղմնիչն եղաւ Հայութիւնը իբր ազգային մարմին նկատելու գաղափարին, և զայն իբր ընկերական մարմին մը վերակենդանացնելու ծրագիրին։ Ռուբինեանց հարստութեան՝ Լուսինեաններու օրով և ձեռքով իյնալէն իվեր, Հայութեան գաղափարն ալ կ'իյնար իբր ազգութիւն նկատուելէ, և անյոյս տեսութիւններ էին որ կը զօրանային։ Արցախի ծոցը յղացուած գաղափարը, որ Էջմիածինի խորհրդակցութեան մէջ խօսուեցաւ* (§ 1790), *և որուն հետեւանօք Յակոբ կաթողիկոս Վրաստանի վրայէն Կ-Պոլիս եկաւ, ծերունի Պօղի երիտասարդ որդւոյն միտքին մէջ սեւեռեցաւ, որ եթէ տարիքովը գործին գլուխ չէր կրնար սեպուիլ, սիրտին եռանդովը գործը հրահրողն եղաւ։ Այս բանին նշանակն է Օրիի Կ-Պոլսէ Եւրոպա անցնիլը, զինուորականութեան հետեւիլը, ազդեցիկ դուռեր բախելը, իշխաններ և թագաւորներ իւր միտքին համոզելը, և գործի ալ ձեռնարկելով երկրէ երկիր և քաղաքէ քաղաք թափառիլը* (§ 1843)։ *Հասարակ բախտախնդիրի կերպարան պիտի տրուէր իրեն, եթէ գաղափարին բարձրութիւնը, նպատակին ուղղութիւնը, աշխատութեան յարատեւութիւնը չարդարացնէին իւր ընթացքը։ Թէպէտ Օրի առանց արդիւնաւորութեան կնքեց իւր կեանքը, այլ անոր մշակած խորհուրդն ու ցանած սերմերը չոչնչացան. և եթէ այսօր, իւր մահուանէն* 200 *տարի ետքը, Հայ ազգութիւնը՝ ընկերական շրջանակի մէջ լաւագոյն դիրք մը ունի, և ապագայ բարօրութեան իղձերով կ'օրօրուի, պէտք է խոստովանիլ թէ շարժումին սկզբնաւորութիւնը Օրիի կը պարտի։ Աշխարհի ընթացքին և դարերու պատմութեան մէջ շատ ու շատ են գաղափարի մը հիմնադիրներ, որ իրենց միտքին արդիւնաւորութիւնը չեն տեսած։ Ազգային զգացմանց տեսակէտէն՝ Օրիի գործին մէջ դիտողութեան կէտ մը կրնայ կազմել դաւանափոխութեան պայմանին համակերպիլը* (§ 1843), *սակայն բուռն զգացումներով տոգորուած, և նպատակին նորութեամբ ոգեւորուած, և կրօնական չեզոք անձի մը համար՝ թերեւս մեղադրելի չըլլան այդ մտածումները։ Միւս կողմէն իրապէս գործադրելի հանգամանք չունեցաւ այդ պայմանը, զոր ստիպողական կերպով կ'առա-*

ջարկէր Լատին աշխարհը, և անոր ներկայացուցիչներուն, կայսրընտիրին և կայսեր և պապին բանադատիչ կամքը։ Բարեբախտաբար երկրորդական մնացին այդ գործիչներն ալ, իրենց պայմաններն ալ։ Օրի չուզեց ետ թողուլ իր առաջին համոզումը, երբոր աւելի զօրաւոր և աւելի խոհական և աւելի լայնամիտ հովանաւոր մը գտաւ իր զգացումներուն, Ռուսիոյ մեծ կայսր Պետրոս Մեծը, որ Հայերը պաշտպանելու համար չպահանջեց անոնցմէ իրենց դաւանութեան զոհողութիւնը։ Ռուսիոյ կայսեր անունն ու գործը առջեւ անցան, և անոր անունով կատարեց Օրի Պարսկաստանի դեսպանութիւնը (§ 1900)։ Այս թուականէն Հայեր Ռուսիոյ դարձուցին իրենց աչուըները։

**1902**. Օրիի ձեռնարկին տրուած Ռուսական գոյնը աւելի եւս չեշտուեցաւ անոր մահուանէ ետքը։ Մինաս

**ՄԻՆԱՍ ՏԻԳՐԱՆԵԱՆ**

վարդապետ Տիգրանեան, որ շարժումին առաջին օրէն Օրիի գործակից էր եղած (§ 1845), և որ իբր Օրիի ներկայացուցիչը Ռուսաստան էր մնացած անոր Տիւսելտորֆ (§ 1846) և Պարսկաստան (§ 1899) մեկնած միջոցներուն, իբր Օրիի յաջորդ՝ իր վրայ առաւ գործին շարունակութիւնը, ամփոփուելով պարզապէս Ռուսական յարաբերութեանց շրջանակին մէջ։ Իրաւ անգամ մը Եւրոպա անցած էր Օրիի հետ և կայսրընտիրին ծանօթացած (§ 1845), սակայն այնչափը չէր բաւեր, որ եւրոպական լեզուաց և գործոց անտեղեակ Հայաստանցի վարդապետը՝ կարենար յարաբերութիւններ մշակել Արեւմուտքի հետ, և Եւրոպական արքունիքները չահագրգռել Հայերու մասին։ Հետեւաբար այդ կողմէն նոր բանլիքներ չունինք այլեւս, և Լատինական մօտաւորութիւնը խափանուած կը մնայ։ Մինաս վարդապետ բոլոր ուշադրութիւնը դարձուց Ռուսաց կառավարութիւնը շահագրգռել Հայաստանի խնդիրներով, և երեք տարիներ, 1711'էն 1714 որ Աստրախան մնաց, անձանձրոյթ տեղեկագրեր մը եղաւ Աֆղաններուն շարժումին, որ կը սպառնար այլայլել Պարսկահայ երկիրներուն վիճակը, և Աէֆիներու տկարացած և մեղկացած հարստութիւնը տապալել։ Գործը Ռուսներուն համար անտարբեր չէր, և Պետրոս ալ, 1715'ին Պարսկաստան դեսպան գացող Արտէմ Վոլինսքիի հրահանգ կու տար յատկապէս տեղեկութիւններ հաւաքել Հայ ժողովուրդի մասին (ԼէՕ. Բ. 284)։ Իսկ այդ հետաքրքրութիւնը թելադրողը նոյն ինքն Մինաս վարդապետն էր, Օրիի հոգւով ներշնչեալ մը, և Հայոց ազգութեան վերակենդանացման անձնուէր աշխատող մը։ Օրիի ձեռնարկին մերձաւոր շարունակութիւնը տալէ ետքը, այժմ դառնանք նոյն միջոցին կատարուած ուրիշ եղելութիւնները պատմել։

**1903**. Թուականներու մերձաւորութիւնը մեր առջեւը կը դնէ Աւետիք պատրիարքը, որ 1706 դեկտեմբերին Ս. Միքայէլի վանքը

**ԱՒԵՏԻՔԻ ՎԻՃԱԿԸ**

փակուած կը մնար Գաղղիոյ թագաւոր Լուդովիկոս ԺԴ'ի հրամանով (§ 1878)։ Ստոյգ է որ Հռոմէն, Կղեմէս ԺԱ պապին կողմէն, Բախանջոֆէն և տէրողական յանձնարարութիւններ կու տային Լուդովիկոսի, որպէսզի Բանտարկեալը ազատէ տեղւոյ (ԹՕԲ. 112). սակայն անհնար է Գաղղիացւոց՝ Մեծ մականուանած և իրենց վեհապետներուն երեւելագոյնը ճանչցած թագաւորին ճակտէն սրբել՝ Աւետիքի պարագայովը դրոշմուած բիծը, քանի որ էր դեղագործն յետոյ անոր վերցուեցան գլխաւոր հեղինակն եղած, և էր հռոմէներէ ու յոյներէ հաւանութիւն գտած, և նենգութեամբ գերեալ ու բանտարկեալ Աւետիքէ անձէն ուրիշ հոգին էր (ԹՕԲ. 114)։ Աւետիք չղթայակապ փակուած էր Ս. Միքայէլի բանտ-վանքին խուցերէն միոյն մէջ, ուրիշ մէկու մը հետ յարաբերութիւն չունենալով, բայց եթէ աշխատաւոր միաբան Մօֆռէռ Ժուլէն (mon frère Julien), Եղբայր Յուլիանոսի հետ։ Աւետիք կը գրէ, թէ նա յոյժ անզգամ էր, որ մարդ խաղաղ չտայր, կամ բերէր կերակուր, և մեծ նախատէր հերետիկ շիզմաթիկ (hérétique, schismatique), այսինքն հերետիկոս և հերձուածող կոչելով. ինքն լոյս չէր տար, և մեծ խաւար կը թողուր։ Միայն մեծաւորին այցելութեանց ատեններ լուսով տուն կը բանար և ֆէնճէրէն։ Աւետիք կը կարծէ թէ Ճուլէն մեծաւորին կամքին հակառակ կ'ընէր կը նեղէ. սակայն մենք լաւ գիտենք, որ Լատին կրօնաւորը իր մեծաւորին հրահան-

գին հակառակ չէր կրնար գործել, և եղածը հարկաւ խաղ մըն էր խնդրել Աւետիքը խաբելու։ Բոլորովին տարօրինակ պարագայ մըն ալ կը յիշէ Աւետիք, թէ իր խուցին վրայ գմբեթ մը, [illegible], և բանտապան կրօնաւորներ արգելել չէին մտածեր։ Աւետիքի սիրտին վիշտ տուող պարագաներուն աւելի մեծն էր, երբ հերետիկոս և հերձուածող նախատուիլը, այդ [illegible], կը գրէ, բայց [illegible] որ պատասխանէի. ուստի [illegible]։ Նախատինքներուն զոյգ կ'ընթանային զւանափոխութեան [illegible], և կը հալածուէր նոյն իսկ անոր համար, որ [illegible] կը պահէր, [illegible]։ Աւետիք ձանձրացած բանտապան կրօնաւորին լուտանքներէն, անոր նշանացի կ'իմացնէ, [illegible] և անկէ ետքը կ'ըսէ. [illegible] (74 ԱՐՐ. 194)։ Այդ մանրամասնութիւնները յառաջ բերինք իմացնելու համար թէ Աւետիքի հաւատաքննական բանտապանները մինչև ուր կը մղէին զայն նեղելու նրբութիւնները։ Միջոց մը ետքը սկսեր են [illegible] սակայն հոն ալ [illegible] եղեր (ԹՕԲ. 113), իբրև խորշելի անձնաւորութիւն մը։ Ս. Միքայէլի վանքը եղած միջոցին վերջերը ծովէն ուրիշ տեղ կ'երթայ, և տեղը Սաքմօ աշխատաւոր միաբան մը կ'անցնի, և Աւետիք գոհունակութեամբ մը՝ [illegible] կ'ըսէ, միայն անոր համար որ [illegible] (74 ԱՐՐ. 194), այսինքն է, գոնէ չէր նախատեր։

**1904**. Տարիներ անցեր էին Աւետիքի անյայտանալէն, սակայն Կ-Պոլսոյ մէջ անոր անունը մոռցուած չէր, և զայն գտնելու ջանքերը կը շարունակէին, նոյնիսկ անհիմն զրոյցներ ժողովուրդը կը դղրդէին, և [illegible], այսինքն հսկումներ կը կատարուէին, [illegible] (ԹՕԲ. 105)։ Կը լսուի, երբ

ՊԱՍԹԻՅԼԻ ՄԷՋ

թէ Ռուսաստոյ եկած ըլլայ, և իսկոյն շատեր հոն կը վազեն։ Մէկ մը Հոլանտայոյ մէջ տեսայ կ'ըսէ, և պարգևներ կը ստանայ. երկու Թուրք գերիներ Մալթա կղզին բանտարկուած է կ'ըսեն, և իրենց փրկանքը կը շահին. և հարուստ Հայեր յատուկ նաւով Մալթա կ'ուղևորին (ԹՕԲ. 106)։ Ֆէրիօլ այդ պարագաները կը հաղորդէ իրեն թագաւորին, որուն ականջը կը հասնի թէ Աւետիքը փնտռելու մարդեր եկած են Լիվօռնօ, և անկէ Գաղղիա պիտի անցնին (ԹՕԲ. 113), և այդ ամէն պարագաները կասկածներ աւելցնելով, [illegible], Աւետիքի համար՝ [illegible] (Bastille) [illegible] հափափելալ գերին ձեռքէ չհանելու համար (ԹՕԲ. 115)։ Աւետիք կը գրէ, թէ [illegible], այսինքն 1710'ին, [illegible] 8, [illegible], որ հին տոմարով կը պատասխանէ 1709 դեկտեմբեր 28'ին, [illegible] (74 ԱՐՐ. 194)։ Թերևս ամսաթիւին մասին շփոթութիւն ունեցած ըլլայ Աւետիք, զի բանտի արձանագրութեանց մէջ 1709 դեկտեմբեր 18'ին գրուած է, թէ [illegible] (ԹՕԲ. 115)։ Սակայն մեր տեսութեամբ այդ անանուն բանտարկեալը Աւետիք եղած պիտի չըլլայ, քանի որ Աւետիք ամսաթուով և եօթնեկի օրով կը նշանակէ Պասթիյլ փոխադրուիլը. թէպէտ յայտակ չէ թէ [illegible] 8 [illegible] օրը հրամանին հասնելուն, թէ Մօնսէնմիշէլէ մեկնելուն, կամ թէ Փարիզ հասնելուն թուականն է։ Պասթիյլ բերուելուն պէս Աւետիք շղթայակապ կը նետուի [illegible], գետնափոր նկուղներէն մէկը, ուր կը մնայ [illegible]։ Այնտեղ [illegible], կ'ըսէ, [illegible] (74 ԱՐՐ. 194)։ Բանտին վերատեսուչը, զոր [illegible] կը կոչէ (ՕՕ ԲՆՍ. 142), հոգ կը տանի բժիշկ բերել և խնամել տալ, և անշուշտ բժիշկի խորհրդովն է, որ գետնափոր նկուղին մէջ Աւետիքի կեանքը վտանգուած տեսնուելուն,

*իբրև մեծ շնորհ մը քառասնօրեայ առաջին բանտարկութենէ ետքը, նկուղէն կը տեղափոխուի, և կը գրուի մէջէ տասարանէ բանտն* (74 ԱՐՐ. 195)։ *Այս բացատրութիւնն ալ կը բաւէ ցուցնել, թէ դարձեալ հանգիստ դիրք մը ունեցած չէ, այլ միայն առաջինին բաղդատութեամբ տանելի նկատուած է։ Պասթիյլի բանտին մէջ կատարուած տեղափոխութիւնը մերձաւորաբար կը դնենք 1710 փետրուարին վերջերը։*

**1905**. *Նոր դիրքին հետ նոր կացութիւն մըն ալ կը ստեղծուի Աւետիքի համար, մարմնական և արտաքին*

ԱՒԵՏԻՔԻ ԳՐՈՒԱԾՆԵՐԸ

*նեղութիւններուն հետ ներքին ձեռք կ'առնուին հոգեկան և ներքին նեղութիւններ, և ստիպումներ կ'ըլլան իւր դաւանութիւնը փոխելու և կաթոլիկ դառնալու, որպէսզի հնար ըլլայ զինքն բանտէն արձակել։ Ցատուկ Գաղղիացի եկեղեցական մը կ'որոշուի այդ նպատակին, մոնսիոր լաբէ Ռընոտօ անուն* (monsieur l'abbé Reynaud) *որպէսզի Աւետիքը թելադրէ և յորդորէ։ Ընտօթի մօտ թարգման կը նշանակուի մոնսիոր Լուգաս մը, որ լեզուագէտ Հայ մը եղած պիտի ըլլայ, զի գրուած է թէ անունը Նորքմանէ Հայոց՝ Խաչատուր. Հայ մը, որ անունն ալ թարգմաներ է՝ գաղղիական Լաքրուա* (La Croix) *կոչման փոխելով, և վստահելի անձ մը դարձեր է, զի Ֆրանս Բոգոսմանկոց ալ կոչուած է։ Աւետիքի հետ յարաբերութիւն ունեցողներուն շարքին, վերոյիշեալներէն զատ կը յիշուին նաև Միքէլ մը դահողան, Անտոն մը կերակուր բերող, և բժիշկ մը, որուն անունը չէ գրուած* (00 ԲՆԱ. 143)։ *Զորս տարիներ կը լրանային որ Աւետիք անտանելի նեղութեանց ներքև կը հալէր, սակայն օրինակելի տոկունութեամբ իր միտքն ու ընթացքը չէր փոխեր, կը յուսար թերևս որ օր մը իրեններ իրեն ազատութեան կերպը կը գտնեն, և զինքն այդ գերութենէն կը փրկեն։ Սակայն տարիներ կ'անցնէին, և Աւետիք զինքն յաւիտենական մոռացութեան իյնկած կը կարծէր, վասնզի ոչ մի կերպով աշխարհէ լուր չէր առնուր։ Հիւանդութիւնն ալ, անհրաժեշտ հետեւանք բազմաչարչար կեանքին՝ զոր կաթոլիկութեան պաշտպանները իրեն պատրաստած էին, օրէ օր կը ծանրանար իւր վրայ, այնպէս որ մարմնոյն զօրութեան հետ հոգեկան զօրութիւնն ալ տակաւ կը նուազէր Աւետիքին վրայ, և դաւանափոխութեամբ իւր տառապալից կեանքին նշխարեալ օրերը մխիթարելու գաղափարը՝ տակաւ կը զօրանար իւր վրայ։ Բայց խկոյն որոշման չէր հասներ. եօթն ամիսներու միջոց մը կ'անցնի տակաւին, մինչև որ Աւետիքի տրամադրութիւնը վճռական որոշման յանգի։ Ընտօթ քահանայն ճարտարութեամբ վարած կ'երևի իրեն յանձնուած պաշտօնը, առաջ Աւետիքի ընթերցանութեան տալով հռոմէական հոգւով գրուած հայերէն գիրքեր, զորս հարկաւ ինքն ալ կ'ընդլայնէր թարգմանին միջնորդութեամբ։ Անկէ ետքը Աւետիքի իբրև ժամանց կը ներուի գրիչով ալ զբաղիլ, նոյնիսկ տպագրեալ գիրքեր արտագրելով, որոնք դեռ պահուած են Փարիզի Գաղղիական մեծ մատենադարանին մէջ* (00 ԲՆԱ. 114)։ *Այս գրութեանց մէջ Աւետիքի աւելցուցած յիշատակարանները, պատմական աղբիւրներն են իւր կրած արկածներուն։ Ընդօրինակած գիրքերէն գլխաւորներն են, Հաբերդոս Բելարմինոսի Պորտուգալացին՝ տրէստանէական լուսաւորութեան, թարգմանութիւն Պետրոս Պօղոս քահանայի. և Կղեմէս Կալանոսի Քերական և տրամաբանական ներածութեան, և Նոր կտակարան Ամստերդամի 1668'ի տպագրութեան վրայէն* (00 ԲՆԱ. 141)։ *Առաջինին վրայ կը գտնուի 1710 յունիս 9/20 թուականը, իսկ վերջինին վրայ օգոստոս 3/14 և օգոստոս 27 թուականները, որք կը ցուցնեն թէ որ միջոցին ներուած է իրեն գրութեամբ զբաղիլ։ Իսկ գրութեան յաջողակութիւնը կը քաղուի Աւետարանը 20 օրէն և Նոր կտակարանը 39 օրէն աւարտած ըլլալէն։ Ընդօրինակութեանց վրայ աւելցուցած յիշատակարաններէն կը քաղուին շատ մը կենսագրական տեղեկութիւններ և իւր արկածներուն մասին ծանօթութիւններ, որոնցմէ արդէն օգտուեցանք պատմութեանս կարգին։ Վերջնագոյն թուական, 1720 օգոստոս 23'ին, կը գրէ, «Ես շատ տարի է որ Իմ անուն էգը որ բանտի կամ, ի մէջ Փարիզու բերդին զնտանին», որով 1706 տարւոյ սկիզբէն հաշուուած կ'ըլլայ իւր բանտարկութիւնը* (§ 1874), *յա-*

մինչև Կ-Պոլսէ ակսելով։ Այդ յիշատակարաններուն մէջ Աւետիք զգուշաւոր է Գաղղիոյ տէրութեան և պաշտօնականներուն դէմ բան չգրել, հարկաւ վախնալով որ գրածները, թարգմանին ձեռքով կրնան բարձրը տեղեր հաղորդուիլ և իրեն վնասել։ Ուստի միշտ չմոռնար աղօթել և գովութեամբ յիշատակել Լուդովիկոս թագաւորը, զոր Լոյի կամ Լոյիզ (Louis) կը կոչէ, և ֆրանսա քըրալը էլչիսի մօնսէնյէօր Պօնշարթրը (Bonchartre), և Փարիզու արշըվէգը կարտինալ Նոայլը (Noailles), յուսալով որ տօֆ-կօյմալ օննէշա ֆինիտոր տօղրուլուսին։ Այս և նման բացատրութիւններ Աւետիքի միտքին հետրզհետէ մեղմանալը կը ցուցնեն, բայց տակաւին մինչև օգոստոս 23 վճռական որոշում մը տուած չերևիր, և զինքն կը կոչէ Աւետիք վարդապետ Հայոց Լուսաւորչեան, կամ վարդապետ Հայոց Լուսաւորչի, կամ Լուսաւոր Հայոց վարդապետ (00 ԲՆՍ· 142-143)։

**1906**. Ուր որ Աւետիքի միտքը աւելի ևս մեղմացած կը տեսնուի՝ ընդարձակ յիշատակարանն է, որ կատարեալ ինքնակենսագրութիւն մըն է։ Գրութեան օրը չէ յիշուած,

**ԱՒԵՏԻՔԻ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ**

բայց ոճէն վերջին օրերուն գրուած ըլլալը կը հասկցուի, թէպէտև տեղ մը լուր փորէ և Հինդ ադամլէր նշանակած է (74 ԱՐՐ· 195) իւր բանտարկութիւնը, բայց Ե և Է թուաւտառերու չփոթութիւն մը կ'ենթադրուի, և էօլն ադամ ու կէօ ընթերցուածը 1710 օգոստոսին կը համապատասխանէ։ Աւետիք Բելարմինոսի գրութեան վերջը ըսած էր յունիս 9/20'ին, թէ լույս գարդաշլարըմըզ, ֆինչէ է դամ ադամ օկէղպէն ֆինչէ է քէրգին կօփարեցի, այնէ երկօս անդամ գզրէնտէն էօս փրեցի, և դեօֆ որ ճշմարէտ էն քանի օսրին, և մարանէօս էմով կնէցի վօսն ֆաքանութեան և հաստատութեան քանէօ (00 ԲՆՍ· 144)։ Սակայն տակաւին այդչափը չէ ըսուած իւր միտքին հաստատութեան վստահանալու և անշուշտ այս եղած է պատճառ, որ մեծ յիշատակարանին մէջ ջանացած է հաստատել թէ ինքն սկիզբէն հռոմէական դաւանութեան համամիտ գտնուած է, և մինչև իսկ իբր կաթոլիկ հալածուած է։ Այդ նպատակով կը յայտարարէ թէ Եղիազար կաթողիկոս եպիսկոպոսական ձեռնադրութեան առթիւ իրեն յանձնարարած ըլլայ, Հռովմտէլ ֆոֆէն, է քահանայ ջուր խաչնել, և Սուրբ Հոգին բըղխած է Հօրէ և յՈրդւոյ ըսել (74 ԱՐՐ· 75), թէ ինքն Յիքէնի եղած ըլլալու ամբաստանութեամբ պատժուածները ազատած ըլլայ (74 ԱՐՐ· 115), թէ կաթոլիկները պաշտպանելուն համար ամբաստանուած ըլլայ (74 ԱՐՐ· 153), թէ իրեն համար ըսուած ըլլայ Ֆրէնկ կ'անէ (74 ԱՐՐ· 155), և թէ Մարտիրոս Քիւլհանճին տեսած ըլլայ իրեն բաժակի ջուր խառնելը (74 ԱՐՐ· 156)։ Այդ պարագաները կամաւոր և դիտումնաւոր յօրինուածներ են անշուշտ, որպէսզի կարենայ վերջնական համոզում գոյացնել տալ իւր կաթոլիկանալուն վրայ, և անով յաջողի ազատութիւնը ձեռք ձգել։ Մենք պէտք չենք զգար ըսել, թէ այս կտորներ գինէն լուր-լուրւ Ծէզվէնոց Ներշնչութեամբ գրուած ըլլան նիւթական բռնութեան ներքև, զի երկարամեայ կրած բռնութիւնները, և անոնցմէ ազատելու համար պահանջուած դարմանը, ներքնապէս ստիպած էին Աւետիքը, իւր ուղղութիւնը փոխել, և անգամ մը այդ միտումը չեշտելէն ետքը, դիւրին էր այլևս եղելութեան վրայ յաւելուածներ և մեկնութիւններ կցել։ Ապաթէոչ բուռն հայադաւանութեան տէր և բռնաւոր հալածիչ կարծուած, և այս պատճառով նենգութեանց մատնուած և նեղութեանց ենթարկուած Աւետիքը՝ իբր կանուխէն կաթոլիկ ցուցընել, հակասութիւնները իբրև ճշմարտութիւն ընդունիլ կ'ըլլար։ Յիշատակարանին վերջը Աւետիք, ներումն կը շնորհէ ամէն անոնց՝ որոնք մարնելով, լուրլուրելով, նախատելով, կողոպտելով, տնով տանելով և արհամարհելով իրեն դէմ ժեղունչէյին, կը հրաժարի Կ-Պոլսոյ և Երուսաղէմի պատրիարքութիւններէն, և է Թագրէն փակեալ քանոյն և մենաստղէն, կ'ուզէ այսուհետև գտանել լուսէղ ճանապարհ կենաց, և հետևել ճշմարիտ ճշմարտութեան, և քան հաստատութեան քանէօ այս, կ'ըսէ, յետամբ էմով գրեալ գիրս յետագայից (74 ԱՐՐ· 195)։ Այդ վերջաբանը պահանջուած յայտարարութեան մը կատարեալ ձևը կու տայ ծանօթ յիշատակարանին, և այս նպատակը կը բացատրէ անոր մէջ տիրող կաթոլիկական միտքը, որ չկրնար եր-

ըեք Աւետիքի նախնական և իրական մխաքը եղած ըլլալ, և պարզապէս արտաքին պաշտօնեութիւն տանելու համար պահանջուած պայմանին նիւթական գործադրութիւնն է։

**1907.** Ցառաջ բերուած վերլուծութիւնները կը ցուցնեն թէ մինչև 1710 օգոստոսի վերջերը չէր վերջացած Աւետիքի վրշտակրութիւնը Լատին հաւատաքննութեան ձեռքէն, երբ կը գրէր թէ Միջէ տասուրանէ բանտն եմ այժմ, և չեմ գիտեր թէ այս ինչ քաղաք է այս օտարական քաղաքս (74 ԱՐԲ·195)։ Բայց վերջապէս ազատութեան հրամանը եկեղեցական և թագաւորական իշխանութիւններէն շնորհուեցաւ, և 1710 սեպտեմբեր 22'ին Փարիզի արքեպիսկոպոս Լուդովիկոս-Անտոն Նոայլ կարդինալին առջև հաւատոյ դաւանութիւնը տուաւ, հայադաւանութիւնը մերժելով և համեմատութիւն ընդունելով (ԹՈԲ·116)։ Պաստիլի բանտէն ազատելով հսկողութենէն չազատեցաւ, վասնզի իրեն բնակութեան տեղ ցուցուեցաւ, Բրթիուլա-Գրօա անձին տունը, Ֆէրու (Férou) փողոցին մէջ (74 ԱՐԲ·73), որ Պոքսման կոչուած է (ԹՈԲ·117), և պէտք է ըլլայ բանտին մէջ ալ թարգմանութեան պաշտօն վարողը և համեմատութեան դարձնելու միջնորդ Խաչատուրը (§ 1905)։ Գրուած կը գտնենք թէ, տուն մը օր եկող տօնայն երգեցաւ նոր Նոտրդամ (Notre Dame) մայր եկեղեցւոյն մէջ (ԹՈԲ·117), բայց չենք ուզեր կարծել թէ Հայ եկեղեցւոյ ձեռնադրութիւնը ոչինչ համարելով կրկին ձեռնադրութիւն տրուած ըլլայ Աւետիքի, այլ սեւամ մը նզովքէ արձակման արարողութիւն մը կատարուած պիտի ըլլայ։ Միայն թէ եպիսկոպոսական աստիճանը զլացուելով, իբր պարզ քահանայ լոկ պատարագելու արտօնուեր է, որով Աւետիք իւր հոգևորական մխիթարութիւն, ամէն օր (ԹՈԲ·118), կամ թէ այլոց ամէն կերպով, Բոպիկ Կարմելեանց (Carmes-Déchaussés) վանքին մէջ կը պատարագէր, և յաճախ բուսաբանական պարտէզին մէջ կը շրջագայէր (74 ԱՐԲ·73)։ Գրեթէ վեց տարի էր որ անտանելի չարչարանքներով հիւծած էր Աւետիք, որ կը նկարագրուի, իբր ամէն կերպով և յուսահատութեամբ, տան մէջ մարմնով խրոված ծերունի մը, որ մէջը խորանի խորշերով կծկուած, ալիք գէշով մորած, հայկական գլխարկին ծոցովը մը վրան դրած, և ոչոր մարմինը ձեռագրին մը ափնուելով կանգուն բռնած (ԹԸԲ·117)։ Կ'երևի թէ Աւետիքը վերջին օրերուն մտնեցած և գրեթէ մահամերձ սեւնելով տուած են անոր ազատութեան շնորհը, զի միայն ինչուկէս ամիս եւս ապրած է, և այն ալ անշուշտ տխտաւոր և հիւանդկոտ վիճակի մէջ, և 1711 յուլիս 11'ին, հին տոմարով յունիս 30'ին, կնքած է իւր կեանքը, անյիշատակ առանձնութեան մէջ, և մարմինը թաղած են Ս. Սուլպիկիոսի (Saint-Sulpice) եկեղեցւոյն գամբարանը։ Տապանաքար ալ ունեցեր է, կ'ըսեն, այլ 1793'ի յեղափոխութեանց մէջ անյայտացեր է։ Կը յիշուի թէ Հռոմ երթալ ալ փափաքած ըլլայ, ուխտի հանգիստ ապաստան մը յուսալով, բայց փափաքին չէ հասած (74 ԱՐԲ·73)։

**1908.** Անհնար է որ պահ մը կանգ չառնենք յետահայեաց ակնարկ մը նետելու համար Աւետիքի գործունեայ և տառապագին անձնաւորութեան վրայ, որ միջոց մը Երկաթեայ Դիմակով (Masque de fer) մարդուն հետ շփոթուեցաւ, և որ 54 տարեկան մեռնելով երկարակեաց անձի մը գործունէութեան հաշիւը, և զառամեալ ծերունւոյ մը ակարութեան կերպարանը կը ներկայէ պատմութեան մէջ։ Աւետիք բացարձակապէս գոհ մը եղաւ մոլեռանդ լատինականութեան, որ Լատին կրօնաւորներէն արծարծուելով բացավառ բորբոքեցաւ Գաղղիական դեսպան Ֆէրիոլի սրտին մէջ, որ իւր իշխանաւոր դիրքին և ներգաւոր միտքին ոյժերը այդ նպատակին ծառայեցուց (§ 1853)։ Աւետիք հայադաւան եկեղեցւոյն հաւատարիմ պաշտպան, կատաղի հալածիչ մը չեղաւ, մանաւանդ թէ ճարտար դարձուածներով յաջողեցաւ նոյն իսկ Լատիններու հետ լաւ յարաբերութիւններ մշակել, և Ֆէրիոլը տրտմել իրեն ընթացքին վրայ նպաստաւոր վկայութիւններ տալու (§1856)։ Այդ կողմէն շատ աւելի բուռն գործիչներ եղան Եփրեմ Ղափանցին և Յովհաննէս Զմիւռնիացին, որոնք սակայն Ֆէրիոլի անգութ զաւաճանութիւններուն չենթարկուե-

ցան, և հնար չէ Աւետիքը կաթոլիկութեան ամենամեծ հալածիչը նկատել, և բրած չարիքին փոխարէնը վրան հրաւիրած բսել, ինչպէս հռոմէականք կ'ուզեն ցուցնել։ Նոյն այն տարին որ Աւետիք կը վախճանէր, Փէրիօլ խենթութեան պատճառով հակողութեան ներքեւ առնուած էր, պաշտօնը ուրիշի յանձնուած էր, և վերջապէս ֆէրէ-խէլւէթը Փարիզ նը Քէրաէր, իր արծաթագին գերահռչակ Եգերացի Այշէ աղջկան հետ (ԹՕԲ. 121), և այս բաւական է հաստատել թէ մոլեգնեալ միտքի մը գործ էր՝ Աւետիքի դէմ վարած անձնական թշնամութիւնը և վատ դաւաճանութիւնը, և թէ Աւետիք անպարտ զոհ մըն է կրօնական մոլեգնութեան։ Երբեք չենք ուզեր բսել թէ Աւետիք ամէն մեղադրանքէ զերծ պաշտօնավարութիւն ունեցած ըլլայ, և համարձակ գրեցինք Երուսաղէմի պատրիարքութիւնը իր վրայ դարձնելուն անօրէնութիւնը (§ 1857)։ Հնար է փառասիրութեան և չահասիրութեան սովորութիւններ ալ ընել իր գործունէութեան ինչ ինչ կէտերուն վրայ, սակայն Աւետիքի դէմ ըրուած մեղադրանքները չատ կը նուազին, թերեւս կ'անյայտանան ալ, իր հակառակորդ Լատիններուն և լատինամիտներուն՝ նենգաւոր և դաւաճան արարքներուն բաղդատութեամբ։ Աւետիքի զօրաւոր հոգի մը ըլլալուն փաստերը, իր պաշտօնական գործունէութենէն աւելի, կրնանք քաղել իր տառապագին կեանքին մէջ թողած յիշատակարաններէն, որոց մէջ ակներեւ են հանդարտ միտքի և կշռադատ խելքի և աննկուն սիրտի արտայայտութիւնները, որով չորս տարիէ աւելի անտանելի խոշտանգանքներու ներքեւ իր ուղղութեան մէջ կրցաւ տոկալ։ Նկատի առնելով իրեն շուրջը կազմուած աշխարհէ անհաղորդ և անծանօթ վիճակը, իրեն վրայ ճընշող ծարատր բռնադատութիւնները, իրեն կրած անտանելի տուայտանքները, և վերջապէս խօթագին և անբժշկելի տխրաւոր վիճակը՝ որ բազմաչարչար կացութեան հետեւանքն էր, մենք պիտի չկարենանք ծանրանալ վերջին պահուն հռոմէադաւանութեան գիջանելուն վրայ ալ։ Իրմէ մնացած յիշատակարանները որ հրատարակուած են, և չատ ևս իրմէ գրուելով անտիպ թուղթեր, քանաափեշխանէլըգլար, ազըթլէր, ազէր-ատէրէր, կէզտակլէր, որոնք ժամանակին պատմութեան վրայ ալ լոյս կը սփռեն, և Եէչա-հատըր ֆէրէթէ նէզէթ կը մախմուրարէն (74 ԱՐՐ. 36). կը ցուցնեն թէ ուշիմութեան և արիութեան հետ բաւական մշակեալ միտքի ալ տէր անձ մըն էր Աւետիք Եւդոկիացի պատրիարքը, լաւագոյն բախտի և փառաւոր վախճանի արժանաւոր անձ մը, որուն սակայն չժպտեց յաջողութեան բախտը, և չի կրցաւ ապատարար արդիւնաւորել իր կարող ձիրքերը։ Անցողակի յիշենք, որ Աւետիքը Վեղարակիր Փրանկիսկեանց իրեն վրայ խնամ և սէր ցուցնելէն, և անոնց խաթակըն վարքէն չխռովելով, էյսազ էտր դարձած և ալաչէրըրէտլը, աչնոցէք կըծառարաց միաբանութեան մտած բսելը (ՁԱՄ. Գ. 748), պարզապէս հռոմէականութեան յերիւրուած մըն է, որով զբաղիլ իսկ չարժեր։

**1909.** Երուսաղէմի և Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեանց միեւնոյն անձի վըրայ միանալը, կամ լաւ ևս Կ-Պոլսոյ պատրիարքին Երուսաղէմի պատրիարքութիւնը իւրացնելը, 1702 յուլիս 13'ի հրովարտակով առաջին անգամ հաստատուած էր Աւետիքի վրայ (§ 1857), և համառօտ ընդհատումէ ետքը նորոգուած 1704 դեկտեմբերին Աւետիքի պատրիարքութեան վերադառնալուն առեն (§ 1868).

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ

Այդ միաւորութիւնը մեծապէս աղետալի եղած էր Երուսաղէմի աթոռին, որովհետեւ աթոռը տէր մը չունէր զինքն խնամող, և վարձկան մատակարարներ, որոնք պապա և ռուհպան անուններու ներքեւ Կ-Պոլսէ կը ղրկուէին, յաճախ աշխարհական դասակարգէ, չահուելէ ու չահեցնելէ տարբեր նպատակ չունէին. իսկ Երուսաղէմապատկան հասոյթներ Կ-Պոլիս կը ղանձուէին, և Կ-Պոլսոյ մէջ կը ծախսուէին առանց Երուսաղէմի աթոռին օգուտ մը ունենալու։ Այդ անօրէն կացութեան տխուր հետեւանքները ողբագին չեշտերով կը նկարագրէ ականատեսն Հաննա։ Կ-Պոլիսէ մեկնող ուխտաւորներուն գիր կը տրուէր թէ ատէտը էմի լէազէ շարագաան, շէրասէնցն և ճըսըլը, և ռախատաարըն էզըէ զաւըեսէլ ռէ գնայինէ։ Բաց ասար դըդըրթը քօլէցայէց առաւըէն

*Կ-Պոլսոյ մէջ, և Երուսաղէմ կը ղրկէին որ* տայցեն այլազգեաց ելեալ դրամոց, *և այս պատճառով* պարտուց լցանցեալ բարդակուտեալ էր *Երուսաղէմի վրայ* (ՀՆՆ. 120)։ Պարտէզարտանն և այլ անապատացն ոմանք *իրենց ազգականները կը ղրկէին, գալով փոխանորդներ* առնէին ընդ ինքեանս ջնանալ և գործել, *և սանք* առնէին զգանձս *աթոռին։ Երուսաղէմը խեղճութեան մէջ կը հեծէր, իսկ Կ-Պոլսոյ մէջ սուտ լուրերով ժողովուրդը կը խաբէին։ Եթէ միաբաններէն ձայն հանող ըլլար,* զծերսն ի բանդ մատնեցուցանէին, և զերիտասարդսն յատորս և ի կալանս կապէին, *այնպէս որ ոչ* եւս համարձակէր ոք ի սրբոցս միաբանից ձայն տալ *ընդ աթոռին իրաւունքներուն* (ՀՆՆ. 122)։ *Երբոր առձեռն միջոցներ սպառեցան սկսան կարասին ալ ծախել, և Պարոնտէրէ մնացած* զգանձեղէնն ժողովեալ ի Յոպպէ էջուցեալ յնփէկդոս, զոսկին և զարծաթեղէն և զայլ անօթս *կը գնէին*, զկոյս, օկէն, բուրվառս, պատանակս, ուռս և զկանթեղս, կոտորել և հալել վաճառէին այլազգեաց (ՀՆՆ. 123), *այն ալ* զհազար դահեկանի զէտն հազիւ թէ երկու հարիւր դահեկանի վաճառէին, զհաւատացեալս կերակրել խեղճ միաբանից համարել թէ խաղաղ հարթանէին, *և երբ խեղճերուն ձեռքը ուխտաւորներէն ողորմութիւն մը իյնար, առ-գանքի պատրուակով կը կողոպտէին։ Որովհետև այդ չատլութեանց համար չարունակ պարտքեր կ'առնէին, այնչափ չատցած էին պարտատէրները*, մինչ զի զրեթէ ի մէջ սրբոյ Երուսաղէմի դժուարաւ գտանէր ոք, որ չէցէր փոխատու և ծառայ առնելոյ *աթոռին վրայ։ Եւ որովհետև վճարում չէր ըլլար, պարտատէրներ ամէն բռնութեանց կը ձեռնարկէին*, զերուսաղէմ ի հրապարակս *կը հանէին*, զդատաւորս յերեսաց երեսաց ի յետս դարձն սրբոյ եկեղեցւոյն կոչէին, *և արարողութիւնները կը խափանէին, և բռնութեամբ կը գոցէին։ Պատմիչը կը յիշէ* զմատենէն զհնաւորաց ի ծոցերն կարասարաց և զեկեղեն զձեռս նորա, զտապակն և զխաչն, զծեծն և զանէծսն, զմորուս թէլեն և զհայհոյանս, զկորստական դրանցն բացեալ և զջարդեալ լուսամուտք, և զփիշերն ի բաց խոյլ ի խուց աղջկայեն դարաստիրոց, ի մէջ եկեղեցւոյ կոչկոտ մտանելն, և ի բերան մեր ի ժամարարն ելանէն, *ձեռքի սկիհը խլելու համար* (ՀՆՆ. 126)։ *Այս ամէնուն հետեւանք եղաւ կարգի և կանոնի, վանականութեան և արարողութեանց խափանիլը, և այնպիսի ընդհանուր անկման վիճակ մը տիրեց, որ ամաչէր ոք ասել զնոյն ի լուր ազգին Հայոց* (ՀՆՆ. 127)։ *Արդարև արտասուելի նկարագիր, որուն ցիչատակութիւնն իսկ սիրտերը կը քամեցնէ։ Այս էր Երուսաղէմի վիճակը մինչև* 1713 *տարին, Սահակ Ապուչեխցի պատրիարքին օրերը, որ թէպէտ Երուսաղէմի մասին գէչ տրամադրուած չկարծուիր, այլ սովորական դարձած ընթացքը տիրացած էր և կը չարունակէր։*

**1910.** *Այդ միջոցին յանկարծ Կ-Պոլիս կուգայ նոր անձնաւորութիւն մը, որ սահմանուած էր մեծ և օգտակար դեր մը ունենալ Կ-Պոլսոյ պատրիարքութեան պատմութեան և խանգարեալ կացութեան վրայ։* 

ԱՄՐՏՈԼԻ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆ

*Յովհաննէս Բաղիչեցի վարդապետն էր, աւելի ծանօթ Կոլոտ մականունով։ Յիշած ենք իր կարգին Բաղէշի քաղաքին ծայրը, Խացերով գետակի եզերքը գտնուող Ս. Կարապետ Ամլորդի, և կամ ժողովրդական հնչումով Ամրտոլի վանքը, որ Գրիգոր Տաթևացիի ժամանակէն սկսաւ ուսումնական փայլ մը առնել Դանիէլ Ճգնաւոր վարդապետէ սկսելով, և որուն յաջորդութիւնը հասաւ մինչև Բարսեղ Գուտաացի* (§ 1710) *կամ Ազբակեցի* (ԿՈՆ. 147), *որ նոր զարկ մը տուաւ Բաղէշի ուսումնարանին, զոր* դասատուն (ԿՈՆ. 2) *կամ* համալսարան (ԿՈՆ. 142) *կը կոչեն իրայինք, հարկաւ արտաքին ուսմանց ալ պարապելնուն պատճառով։ Բարսեղ Գուտաացիին 1615'ին յաջորդեց Ներսէս Մոկացի, որ ետքէն Մեծ-Անապատը փոխադրուեցաւ* (§ 1711), *և որոշակի չենք գտներ անոր յաջորդը կամ յաջորդները, միայն գիտենք որ իբր երեսուն տարի ետքը, այսինքն մէկ դարուն երկրորդ կէսին կը փայլէր Վարդան Բաղիչեցի վարդապետ, որ նշանաւոր էր իր ժամանակին, և բազմաթիւ աշակերտներ հասուցեր էր, որոնց մէջ աւելի նշանաւոր հանդիսացան Գրիգոր Ծիրուանցի և Յովհաննէս Բաղիչեցի։ Վարդանի հռչակը մեծ էր, և Ամրտոլ չինութիւններով և մատենագրութեամբ ճոխացաւ* (ԿՈՆ. 3), *բայց դժբախտաբար մանրամասն տեղեկու-*

*թիւններ չունինք իր գործի սկսելուն, և արտադրած արդիւնքներուն վրայ. իր աշակերտներն ալ երախտապարտ գովեստներ ունին, առանց կենսագրական տեղեկութիւններու։ Որչափ ալ երկար ենթադրենք Վարդանի գործունէութիւնը, հազիւ չէ Ներսէս Մոկացիի յաջորդած ըսել, և ոչ ալ գիտենք, թէ քանիներ և որոնք եղած են երկուքին մէջտեղ։ Վարդան վախճանեցաւ* 1705'*ին յէջման սուրբ Լուսաւորչին ի վիրապն խոր* (ԿՈՂ. 147), *այսինքն է մարտ* 24'*ին, և Բարսեղի մօտ թաղուեցաւ Ամրտոլու եկեղեցւոյն առանձին վրայ* (ԿՈՂ. 3), *բայց յաջորդութիւնը խնդիրներու տեղի տուաւ, և ներքին գժտութեանց պատճառ եղաւ, որով երկու ընտրելագոյն աշակերտներ, Գրիգոր և Յովհաննէս, ստիպուեցան իրենց սիրեցեալ համալսարանը թողուլ, և զանազան վանքեր անցնելու համար Ապահունիք, Վաղարշակերտ, Վիշապաձոր և Հասոմասի վանք հանդիպելէ ետքը, Գլակայ Ս. Կարապետի վանքը հաստատուեցան, առաջնորդ Կարապետ եպիսկոպոսի խնդրանօք և պաշտպանութեամբ։ Այս թուականէն սկսաւ Գլակայ մայրավանքին վերաշինութեան և վերակենդանութեան նոր շրջան մը. սակայն քանի մը տարուան շինութիւնները մէկէն հիմնայատակ քանդուեցան* 1709'*ին ի Մեծահրաշ կերակրելոյն* (ԿՈՂ. 158), *այսինքն յունիս* 5'*ին տեղի ունեցած երկրաշարժէն։ Պէտք եղաւ նորէն վերսկսիլ վանաշինութիւնը, և յաջողեցան կանգնել շինուածքն գեղեցկատեսակ յօրինուածք, և գաւիթ կամարակապ, զանգակատուն կաթողիկէաւ, և ընակութեան սենեակներ* (ԿՈՂ. 162)։ *Նոյն միջոցին Կարապետ եպիսկոպոսի վախճանելուն, Գրիգոր Ճիրումցի վանահայր ընտրուեցաւ, և Յովհաննէսի հետ գործին հետեւեցաւ, միայն թէ մեծագումար պարտքի տակ իյնալն։ Այս պատճառով Յովհաննէս* 1712'*ին հանգանակութեան ելաւ և շրջագայութեան ճանապարհութեամբ, գոհացուցիչ արդիւնք ունեցաւ հանդիպած քաղաքներ, մինչև որ Կ-Պոլիս հասաւ* 1712'*ին վերջերը։ Սահակ պատրիարքի պաշտպանութեամբ, այնտեղն ալ յուսալ և նպաստ արդիւնքներ ունեցաւ, որոյ և աշակերտեցան սորա վարժն Գլակայ ի բազմատեսակ գործոցն* (ԿՈՂ. 163)։ *Կոլոտի դէպի Կ-Պոլիս եկած պահուն, ուրիշ վարդապետներ ալ ուրիշ կողմեր հանգանակութեան ելած են, որոնց մէջ կը յիշուին Աբրահամ Խոշաբեցի, Ներսէս Մերունի, և ուրիշ Յովհաննէս մը* (ԿՈՂ. 164)։

**1911**. *Երուսաղէմի պարտքին և կացութեան մասին հետզհետէ հասնող ձախող լուրերը և Կոլոտի Գլակայ պարտքին մասին յաջող գործունէութիւնը, իրարու հետ համեմատելով, նոյնինքն Կոլոտը Երուսաղէմ յղելու խորհուրդը կազմեցին Սահակ պատրիարքի միտքին մէջ, որուն համաձայնեցան Յարութիւն Մուրատեան, Յարութիւն Թէմէքէլեան, և Սարգիս ու Իսրայէլ ու Լոթմին գլխաւորներ* (ԿՈՂ. 12), *և բնաւ իշխանք և ժողովուրդք Հայոց* (ՀՆՆ. 129), *և բազում անգամ հրամանօք և սաստիկ ստիպմամբ համոզեցին Կոլոտը Երուսաղէմ երթալ* (ԿՈՂ. 164), *պատուել և վերել անուամբ և զայն ճանպայ հանեցին ընդ փառաւորական ամբոխաւորն և շքաւոր արդեամբք, այսինքն մաս մը գումարով* (ՀՆՆ. 129). *ինչպէս և ինքն ալ կ'ըսէ, թէ պարտաւորուեցաւ փոխել ողորմութեան հաստատելոյն ի սուրբ Երուսաղէմ, և ծառայել աստուածային տեղեացն* (ԿՈՂ. 164)։ *Կոլոտ Երուսաղէմ հասաւ մեծապահքի երկրորդ կէսին մէջ, զատիկէն առաջ, որ* 1713'*ին կը հանդիպէր ապրիլ* 5'*ին։ Իր հանգիստը 'սակաւ ինչ շնորհաւորութեան եղեւ արքայ տանն այնորիկ* (ԿՈՂ. 169), *վանքի տեսնալով և ցաւօք լսեալ, որ ի յետոյ կողոպտեալ և արծաթաւեր մերոնոց և սրբանոց դրեալ-ցեալ՝ վարել հաստատունոց, տարապայման անշքացեալ էր Երուսաղէմի աթոռը. իր բերած դրամով և ուխտաւորներու նուէրներով սկսաւ ինչ ինչ անփականութիւններ դրուէ ազատել* (ԿՈՂ. 168), *և յատկապէս զի փոքրիկ զանի* (ՀՆՆ 129), *որ պիտի ըլլայ եկեղեցին Աստուծոյ, և ի սուրբ Յարութեան մէջ կանթեղն* (ԿՈՂ. 169), *և պարտեզն վանաց Հրեշտակապետաց* (ՀՆՆ. 129), *որ այժմ Փռանկաց եղեւ կայծն ի ձեռն՝ ազատեցան ձեռօքն Տեառն* (ԿՈՂ. 169)։ *Ապրիլ* 5'*ին զատիկը կատարելէն և ուխտաւորները յուղարկելէն ետքը, Կոլոտ շարունակեց իր պաշտօնը աթոռին ներքին բարեկարգութեան, և արտաքին պարտքերու կարգա-*

| | |
|---|---|
| ԿՈԼՈՏ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ | |

դրութեան աշխատելով, թէպէտեւ կրելով [illegible], որոնք այս կերպով [illegible]։ Սակայն Կոլոտ հաստատուն էր իր ուղղամիտ գործունէութեան մէջ, և մէկու մը չէր ներեր աթոռին մատակարարութեան մէջ նենգութեամբ և չարաշահութեամբ օգտուիլ (ՀՆՆ. 130), և անկասկած կը սպասէր [illegible] (ԿՈԼ. 169)։ Իսկ 1714՚ի զատիկը պիտի հանդիպէր մարտ 28՚ին, դեռ եղանակները չպարզուած։

**1912.** Կոլոտի այս ակնկալութիւնները չիրականացան։ Սահակ Ապուչեխցիին պատրիարքութեան առաջին տարիները համեմատաբար հանդարտ անցած էին, բայց ջնջուած չէր ազգին

ՍԱՀԱԿ ՊԱՇՏՕՆԱՆԿ

մէջ տիրող երկպառակութիւնը, միշտ կաթոլիկական ձգտումներու պատրուակին ներքեւ։ Եթէ մէկ կողմէն լատինամիտներ, Լատին և Լատինաց մօտ կրթուած եկեղեցականներու գրգռութեամբ, և Արեւմուտքէ հասնող նպաստներով, և Գաղղիական դեսպանատան կողմէ ցուցուած պաշտպանութեամբ զօրացած, իրենց նպատակը յառաջացնելու կ՚աշխատէին, պատրիարքարանն և ազգն ալ կը պարտաւորուէին հնարաւոր միջոցներով անոնց խրախտանքը զսպել, և ազգային կացութեան և եկեղեցական ինքնութեան համար աշխատիլ։ Որովհետեւ օտար դաւանութեան սիրայարները օտար պետութեան միջամտութեամբ կ՚ուզէին օգտուիլ, իրենց ազգութեան և դաւանութեան սերտ փարած Հայերն ալ՝ իրենց տէրութեան պաշտպանութիւնը պիտի դիմադրէին անոնց։ Այն ժամանակին Եւրոպական տէրութեանց և Օսմանեան պետութեան մէջ տիրող թշնամութիւնները և սպառնացող պատերազմները, բնական իմն հետեւութեամբ Օսմանեան կառավարութեան աչքին կասկածաւոր պիտի կացուցանէին Արեւմտեայց հետեւողութեան դիմող և բարեկամութեան փառահացող խումբերը։ Ծիշդ այդ միջոցներուն մեծ եպարքոս Տամատ Ալի փաշա Վենետիկեցիներուն և Աւստրիացիներուն դէմ պատերազմի նախապատրաստութիւններով կը զբաղէր, անոնցմէ խլելու համար Պեղոպոնէսի և Հունգարիոյ տիրապետութիւնը (ԺՈՒ.325)։ Ահա կաթոլիկութեան միտողներու դէմ կարծեցեալ կրօնական հալածանքին տիրապէս քաղաքական բացատրութիւնը։ Այդպիսիներու դէմ ձեռք առնուած միջոցներուն չօշափելի չափժառիթը, Լատիններուն կողմէն բանուած ընթացքն էր, [illegible] (ՉԱՄ. Գ. 758), այսինքն է., Հայոց եկեղեցիները չերթալ, և Լատին եկեղեցիներ յաճախել, որ զգալի կերպով պետութիւնը իրենց դէմ գրգռել բսել կ՚ըլլար։ Ահա պատճառը որով Սահակ պատրիարքի օրերն ալ ազատ չմնացին նեղքին ազմուկներէ, և քանի որ խնդիր մը կար մէջտեղ, ամէն անձնական վէճեր կամ կիրքի յուզումներ՝ շուտով այդ կերպարանին կը վերածուէին։ Այս ձեւը առաւ նաեւ Սահակ պատրիարքի և Թոռոսթոյի առաջնորդին միջեւ ծագած վէճը. պատրիարքն՝ առաջնորդը պաշտօնէ հանած էր, և առաջնորդն ալ համարձակեցաւ Սահակ պատրիարքը ամբաստանել կառավարութեան առջեւ։ Անոր կողմը զօրացուցին իշխանաւորէն դժգոհ եղող զանազան խումբերը, և կառավարութիւնը վճռեց պատրիարքի փոփոխութիւնը (ՉԱՄ. Գ. 757), և Սահակ պաշտօնէ դադրեցաւ 1714 մարտին, որով 1708 դեկտեմբերէն սկսելով 5 տարի և 7 ամիս պատրիարքական աթոռի վրայ մնացած կ՚ըլլայ։ Ահա Կոլոտի ակընկալութիւններուն պարապի ելլալուն մէկ պատճառը, զի ոչ միայն պատրիարքական տագնապը արգելքներ կը յարուցանէր, այլ և Սահակի հեռանալով իր պաշտպանը կը կորսնցնէր։

**1913.** Ձախորդութիւններ կարծես թէ իրար կը հալածեն, և երբ Կոլոտ պատրիարքական տագնապին շշուկներով կը վարանէր, լուր կ՚առնէ թէ Նաւն ուխտաւորաց, դեռ Միջերկրական

ՈՒԽՏԱՒՈՐԱՑ ՎՏԱՆԳԸ

մեծ ծովը չելած, Մարմարայի մէջ, [illegible] կամ Հերակլիոյ, այսինքն Էրեյլիի առջեւ խորտակեցաւ։ Ուխտաւորներ փորձանքէն ազատելով Կ-Պոլիս կը դառնան, և [illegible]

թիւններ չունինք իր գործի սկսկլուն, և արտադրած արդիւնքներուն վրայ. իր աշակերտներն ալ երախտապարտ գովեստներ ունին, առանց կենսագրական տեղեկութիւններու։ Որչափ ալ երկար ենթադրենք Վարդանի գործունէութիւնը, հազիւ չէ Ներսէս Մոկացիի յաջորդած ըսել, և ոչ ալ գիտենք, թէ քանիներ և որոնք եղած են երկուքին մէջտեղ։ Վարդանի վախճանեցաւ 1705'ին յելման տաւնը Լուսաւորչին ի վիրապէն խոր (ԿՈՂ. 147), այսինքն է մարտ 24'ին, և Բարսեղի մօտը թաղուեցաւ Ամրտոլու եկեղեցւոյն առևանին վրայ (ԿՈՂ. 3), բայց յաջորդութիւնը խնդիրներու տեղի տուաւ, և ներքին գժտութեանց պատճառ եղաւ, որով երկու ընտրելագոյն աշակերտներ, Գրիգոր և Յովհաննէս, առիթուեցան իրենց սիրեցեալ համալսարանը թողուլ, և զանազան վանքեր անձնալու համար Աղահանիք, Վաղարշակերտ, Վիշապաձոր և Հաւատամի վանք հանդիպելէ ետքը, Գլակայ Ս. Կարապետի վանքը հաստատուեցան, առաջնորդ Կարապետ եպիսկոպոսի խնդրանօք և պաշտպանութեամբ։ Այս թուականէն սկսաւ Գլակայ մայրավանքին վերաշինութեան և վերակենդանութեան նոր շրջան մը. սակայն քանի մը տարուան շինութիւններ մէկէն հիմնայատակ քանդուեցան 1709'ին ի Մէծահրաշէ կերակրօքն (ԿՈՂ. 158), այսինքն յունիս 5'ին տեղի ունեցած երկրաշարժէն։ Պէտք եղաւ նորէն վերսկսիլ վանաշինութիւնը, և յաջողեցան կանգնել եկեղեցիներ բեմբեցկատանդոց յօրինմամբ, և գաւթիւ կամարակապ, զանգակատամբ կանոնչեցեալ, և ընակութեան սենեակներ (ԿՈՂ. 162)։ Նոյն միջոցին Կարապետ եպիսկոպոսի վախճանելուն, Գրիգոր Շիրուանցի վանահայր ընտրուեցաւ, և Յովհաննէսի հետ գործին հետեւեցաւ, միայն թէ մեծագումար պարտքի տակ ինկան։ Այս պատճառով Յովհաննէս 1712'ին հանգանակութեան ելաւ և շէնշարարն ձանապարհութեամբ, գոհացուցիչ արդիւնք ունեցաւ հանդիպած քաղաքներէ, մինչեւ որ Կ-Պոլիս հասաւ 1712'ին վերջերը։ Սահակ պատրիարքի պաշտպանութեամբ, այստեղէն ալ շուտով և ճոխ արդիւնքներ ունեցաւ, որովք և ուղղեցաւ աղաւթք վանին Պոլսոյ ի թագաւորաց դարպասուն (ԿՈՂ. 163)։ Կոլոտի գլխի Կ-Պոլիս եկած պահուն, ուրիշ վարդապետներ ալ ուրիշ կողմեր հանգանակութեան ելած են, որոնց մէջ կը յիշուին Աբրահամ Խօշաբեցի, Ներսէս Մերունի, և ուրիշ Յովհաննէս մը (ԿՈՂ. 164)։

**1911.** Երուսաղէմի պարտքին և կացութեան մասին հետզհետէ հասնող ձախող լուրերը և Կոլոտի Գլակայ պարտքին մասին յաջող գործունէութիւնը, իրարու հետ համեմատուելով,

ԿՈԼՈՏ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

նոյնինքն Կոլոտը Երուսաղէմ յղելու խորհուրդը կազմեցին Սահակ պատրիարքի միտքին մէջ, որուն համաձայնեցան Յարութիւն Մուրատեան, Յարութիւն Թէմէքէլեան, և Սարգիս ու Իսրայէլ ու Լոթմին գլխաւորներ (ԿՈՂ. 12), և բնաւ իշխանք և ժողովուրդք Հայոց (ՀՆՆ. 129), և բազում անգամ հրաւիրմամբ և սաստիկ ստիպմամբ համոզեցին Կոլոտը Երուսաղէմ երթալ (ԿՈՂ. 164), ընտրել և կոչել անուամբ և գայն ճանչալ հանեցին ընդ պատրիարքական աթոռոյն և շափաւոր արդեամբք, այսինքն մաս մը գումարով (ՀՆՆ. 129). ինչպէս և ինքն ալ կ'ըսէ, թէ պարտաւորուեցաւ տանել շնորհօքն հաստատեցելոյն ի սուրբ Երուսաղէմ, և ծառայել աստուածային տեղեացն (ԿՈՂ. 164)։ Կոլոտ Երուսաղէմ հասաւ մեծպահքի երկրորդ կէսին մէջ, զատիկէն առաջ, որ 1713'ին կը հանդիպէր ապրիլ 5'ին։ Իւր հանդիպը աւելորն ճշմարտութեան եղեւ օրհնաւ տանն աշխարհին (ԿՈՂ. 169), վանքի անունով և ցանց յեցելս, որ է յետոյ կոչեցեալ և արծաթակեր մեծանոց և ոսկեղէն քերովբէից՝ մեծել հաստատանոց, սարսափելի անշիջելի էր Երուսաղէմի աթոռը. իր բերած դրամով և ուխտաւորներու նուէրներով սկսաւ ինչ ինչ սեփականութիւններ գրաւէ ազատել (ԿՈՂ. 168), և յատկապէս մի ծոցէլ վան (ՀՆՆ 129), որ պիտի ըլլայ եկեղեցին Աստուծոյ, և ի սուրբ Յարութեան մէջ կանթեղն (ԿՈՂ. 169), և դարպէզն վանոց Հրեշտակապետաց (ՀՆՆ. 129), որ ու Ֆրանկաց եղել կոչէ է ի բուն՝ աղօթեցան ընդհանուր Տեառն (ԿՈՂ. 169)։ Ապրիլ 5'ին զատիկը կատարելէն և ուխտաւորները յուղարկելէն ետքը, Կոլոտ շարունակեց իր պաշտօնը աթոռին ներքին բարեկարգութեան, և արտաքին պարտքերու կարգա-

դրութեան աշխատելով, թէպէտեւ կրելով «զղջարտութեան ծառայն է ծածկաբար դաւանութե-րոյն, և ի մերայնոց ընծայեալ՝ զնոյն և յօժ-արակամ նեղութեան», որոնք այս կերպով հաւատոյ մնալով է ամեն և է յարակցութենէ սրբոյ տան։ Սակայն Կղեմէս հաստատուն էր իր ուղղամիտ գործունէութեան մէջ, և մէկու մը չէր ներեր աթոռին մատակարարութեան մէջ նենգութեամբ և չարաչահութեամբ օգտուիլ (ՀՆՆ. 130), և ակնկալեց կը սպասէր ժողովեան մէջ ուխտաւորաց կրկին օրհնութեան ի Բէղենդէոյ (ԿՈՂ. 169)։ Իսկ 1714'ի զատիկը պիտի հանդիպէր մարտ 28'ին, դեռ եղանակները չպարզուած։

**1912**. Կղեմէսի այս ակնկալութիւնները չիրականացան։ Սահակ Ապուչեխցիին պատրիարքութեան առաջին տարիները համեմատաբար հանդարտ անցած էին, բայց ջնջուած չէր ազգին մէջ տիրող երկպառակութիւնը, մինչ կաթոլիկական ձգտումները պատրուակին ներքեւ։ Նթէ մէկ կողմէն լատինամիտներ, Լատին և Լատինաց մօտ կրթուած եկեղեցականներու գրգռութեամբ, և Արեւմուտքէ հասնող նպաստներով, և Գաղղիական դեսպանատան կողմէ ցուցուած պաշտպանութեամբ զօրացած, իրենց նպատակը յառաջացնելու կ'աշխատէին, պատրիարքարանն և ազգն ալ կը պարտաւորուէին հնարաւոր միջոցներով անոնց խրախտանքը զսպել, և ազգային կացութեան և եկեղեցական ինքնութեան համար աշխատիլ։ Որովհետեւ օտար դաւանութեան միրայարները օտար պետութեան միջամտութեամբ կ'ուզէին օգտուիլ, իրենց ազգութեան և դաւանութեան սերտ փարած Հայերն ալ՝ իրենց տէրութեան պաշտպանութիւնը պիտի դիմադրէին անոնց։ Այն ժամանակին Եւրոպական տէրութեանց և Օսմանեան պետութեան մէջ տիրող թշնամութիւնները և սպառնացող պատերազմները, բնական իմն հետեւութեամբ Օսմանեան կառավարութեան աչքին կասկածաւոր պիտի կացուցանէին Արեւմտեայց հետեւողութեան դիմող և բարեկամութեան վստահացող խումբերը։ Ծիչդ այդ միջոցներուն մեծ եպարքոս Տամատ Ալի փաշա Վենետիկեցիներուն և Աւստրիացիներուն դէմ պատե-

ՍԱՀԱԿ ՊԱՇՏՕՆԱՆԿ

րազմի նախապատրաստութիւններով կը զբաղէր, անոնցմէ խլելու համար Պեղոպոնէսի և Հունգարիոյ տիրապետութիւնը (ԺՈՒ.325)։ Ահա կաթոլիկութեան միտողներու դէմ կարծեցեալ կրօնական հալածանքին տիրապէս քաղաքական բացատրութիւնը։ Այդպիսիներու դէմ ձեռք առնուած միջոցներուն չօշափելի չարժառիթը, Լատիններուն կողմէն բռնուած ընթացքն էր, «որ ճշմարտին խրատով դիտաւորութեամբ, ատել հաղորդութիւն ինչ ընդ Հայս է հերետիկոսս» (ԶԱՄ. Գ. 758), այսինքն է, Հայոց եկեղեցիները չերթալ, և Լատին եկեղեցիներ յաճախել, որ զգալի կերպով պետութիւնը իրենց դէմ գրգռել բանել կ'ըլլար։ Ահա պատճառը որով Սահակ պատրիարքի օրերն ալ ազատ չմնացին ներքին աղմուկներէ, և քանի որ խնդիր մը կար մէջտեղ, ամէն անձնական վէճեր կամ կիրքի յուզումներ՝ շուտով այդ կերպարանին կը վերածուէին։ Այս ձեւը առաւ նաեւ Սահակ պատրիարքի և Ռոտոսթոյի առաջնորդին միջեւ ծագած վէճը. պատրիարքն՝ առաջնորդը պաշտօնէ հանած էր, և առաջնորդն ալ համարձակեցաւ Սահակ պատրիարքը ամբաստանել կառավարութեան առջեւ։ Անոր կողմը զօրացուցին իշխանաւորէն դժգոհ եղող զանազան խումբերը, և կառավարութիւնը վրճռեց պատրիարքի փոփոխութիւնը (ԶԱՄ. Գ. 757), և Սահակ պաշտօնէ դադրեցաւ 1714 մարտին, որով 1708 դեկտեմբերէն սկսելով 5 տարի և 7 ամիս պատրիարքական աթոռի վրայ մնացած կ'ըլլայ։ Ահա Կղեմէսի ակընկալութիւններուն պարապի ելլալուն մէկ պատճառը, զի ոչ միայն պատրիարքական տագնապը արգելքներ կը յարուցանէր, այլ և Սահակի հեռանալով իր պաշտպանը կը կորսնցնէր։

**1913**. Զախորդութիւններ կարծես թէ իրար կը հալածէին, և երբ Կղեմէս պատրիարքական տագնապին չշուկ-ներով կը վարանէր, լուր կ'առնէ թէ Նաւն ուխտաւորաց, դեռ Միջերկրական մեծ ծովը չելած, Մարմարայի մէջ, Արշիլէոյ կամ Հերակլիոյ, այսինքն Էրէյլիի առջեւ խորտակեցաւ։ Ուխտաւորներ փորձանքէն ազատելով Կ-Պոլիս կը դառնան, և ղուլ նաւ

ՈՒԽՏԱՒՈՐԱՑ ՎՏԱՆԳԸ

կը վարձեն, բայց այն ալ յէր ֆանի մ ....ր, տակաւին ճամբայ չելած, մինչ է տեղէ խօրամ էր, որ քաղաքին Մարմարայի ծովափը Եէնիքաբուի կողմերը պէտք է ըլլայ, է ատտէկ հողմոյ, անշուշտ հարաւային փոթորիկէ, կը վնասուի, և ողնափայտը կը խորտակուի, և չկրնար ճամբորդել։ Այդ գոյժերը վրայէ վրայ ստանալով, աղօւղ Ճօգաւ կը գրէ Կոլոտ, և կը յաւելու, յէշէցօւ գզանօ տէօլքանցն, և կը պատմէ Ս. Յարութեան տաճարին լուսարարին և ուրիշ քրիստոնէի մը տեսած ձախող երազները (ԿՈԼ. 170)։ Զարմանալի չէ Կոլոտի ալ երազներու տուած կարևորութիւնը, որ ժամանակին տիրող նախապաշարում մըն էր, ամէն դասակարգերու վրայ հաւասարապէս տարածուած, որ հիմայ խսկ դեռ ջնջուած չէ մեր ժամանակակիցներուն միջէն։ Ինչ ալ ըլլայ երազներուն տուելիք կարևորութիւնը, իրականը այն էր, որ 1714 տարւոյ զատիկը, որ մարտ 28'ին կը հանդիպէր, յաջող չանցաւ, և Կոլոտ չկրցաւ Կ-Պոլիսէ և ուխտաւորներէ նորանոր միջոցներ ստանալով, յաջող կարգադրութիւններ ընել Երուսաղէմի աթոռին համար, և գլխաւորապէս գրաւի դրուած կալուածներէն և սպասներէն մաս մըն ալ ազատել, և նոր բեռներու տակ չմնել։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՆՁԱԿԵՑԻ**

1914. Երբ Սահակ Ապուչեխցիի պաշտօնականութեամբ և աքսորմամբ, պատրիարքական աթոռը պարապ մնաց, հասարակութեան մէջ անմիջական փութաջանութիւն չտեսնուեցաւ նոր մը ընտրելու, զի մեծամեծներէն ոմանք յանիյրօյէօւլէին, խօլ օյէ օւ ֆէտէին ըէ ա՞ յօտրէօյէն (ՁԱՄ. Գ. 757), որ է ըսել է թէ հրապարակի վրայ աչքի զարնող մը, կամ թէ հետամուտ եղող մը չկար։ Աւրթէն օգտուողը կ'ըլլայ, Յովհաննէս Գանձակեցի, պարսկահայ սահմաններէն եկած վարդապետ մը, կամ լաւ եւս եպիսկոպոս մը, որ տակաւին իրր պանդուխտ ու դիրք չկազմած, հայապարծներու մօտ կը բնակէր, որ անշուշտ իւր հայրենակիցներ էին։ Նա ճանչցուած էր իրր խօտօւլէօյ և օրինաց նախանձախնդիր եկեղեցական մը, և միանգամայն իբրև Ճօրտօրախօ, քաջաքարոզ և միր անձ մը կը յայտնուէր։ Իւր ծանօթ հայապարծները զայն մեծամեծներուն մտադրութեան ներկայացուցին, որոնք հաւնեցան և հաւանեցան, և կառավարութեան ներկայացուցին, և 1714 մարտ 21'ին Ծաղկազարդի օրը, Յովհաննէս պաշտօնապէս աթ.ու բարձրացաւ (ՕՐՄ. 136)։ Յովհաննէսի անծանօթ մը ըլլալը՝ ոմանց անհաճոյ երևցուց անոր պատրիարքութիւնը, և զօրաւոր հետամուտ մը չգտնուիլը կը քաջալերէր Սահակի կողմնակիցները զայն նորէն դարձնելու։ Յովհաննէս իւր ճարտարութեան առաջին փորձը տուաւ, մայրեկեղեցւոյ մէջ ժողովուրդը հաւաքելով, արդէն աւագ շաբթու օրեր էին, և համարձակ յայտարարելով, թէ ինքն գժտութեան պատճառ չուզեր ըլլալ, և յօժարակամ կը քաշուի, եթէ այնպէս կ'ուզեն, բաւական է որ չէյէ խօշշօւխէօն և օէր։ Այդ յայտարարութիւնը ամէնուն համակրութիւնը գրաւեց և միաձայնութեամբ Յովհաննէսի պատրիարքութիւնը ընդունուեցաւ։ Հաւանաբար այդ եղելութեան թուականն է մարտ 26 օրը, որ ուրիշներէ իբր պատրիարքութեան թուական կը նշանակուի (ՁԱՄ. Գ. 757), և որ աւագ ուրբաթ օրուան կը համապատասխանէ, որով կրցած է Յովհաննէս Գանձակեցին հանդիսապէս զատիկը տօնախմբել, մինչ տօնը անպտուղ կ'անցնէր Յովհաննէս Կոլոտին համար Երուսաղէմի մէջ (§ 1913)։ Յովհաննէս Գանձակեցին Արևելեան գաւառներէն եկած, աւելի նախանձայոյզ էր հայրենաւանդ եկեղեցւոյ պահպանութեան և պաշտպանութեան, իւր պատրիարքութեան սկսած օրերն ալ աւելի զայրացած էին եւրոպական յարաբերութեանց կամ փրանկանալու դէմ Օսմանեան պետութեան հակակրութիւնները, նոյն միջոցին Վենետիկեցւոց դէմ մղուած պատերազմին պատճառաւ։ Այս առիթ տուաւ Յովհաննէսի բուռն գործունէութեան ձեռնարկելու, որուն պատմութիւնը կը յետաձգենք Աղեքսանդր կաթողիկոսի յաջորդին օրերուն։

1915. Նոր պատրիարքին առաջին ձեռնարկներէն մին ձախող որոշում մը եղաւ, այն է իբր վէքիլ կամ փոխանորդ, և իբր ղօղօ կամ մատակարար Երուսաղէմ դար-

*ձրնել Յովհաննէս Պալըրքէսիրցին, որ քանի մը տարի առաջ Սահակ պատրիարքէն այդ պաշտօնին կոչուած էր, սակայն դատաստանի վճիռով պաշտօնէն հանուած էր 1711'ին, որովհետեւ թէ՛ վանական հասոյթները, չէրաահն և ըշըրմաքըլըն նամէքէտը յախշաթարըրց, վատնած և ոչնչացուցած էր էկմէ էոր, և թէ՛ պարտքեր աւելցուցած էր ու հաշիւ տեսնուած ատեն պարտաւոր մնացած էր* (ԱՍՏ.Ա. 439)։ *Կոլոտ երբ Պալըրքէսիրցիին անունը կու տայ իւր գրութեանց մէջ, կը կոչէ զայն* Անյաքն է չոլէօ, Բէյն էշէքտիր, Դէրվիշէօլ է ընդրհոց, Նոր հըէոյ և հըն հէքիմն (ԿՈԼ. 170), *որ իրեն հետ ուրիշ երեք* արքանէօլէ էօրդէօլէ *ալ ունենալով, նորէն սկսաւ գօշաքաղութեանց հետեւիլ, ընդհանուր թալան մը կազմակերպել կալուածներու և սպասներու վրայ, վաճառելով կամ գրաւի դնելով, որով* Դէրվիշոյց չէօլօահէ հօրսն ոսուրք, *այսինքն Երուսաղէմի եկեղեցին,* յաճնէց չըրըոց (ԿՈԼ. 171)։ *Երբոր պարտատէրներ տեսան, որ իրենց պահանջը գանձելու միջոցները օրըստօրէ կը նուազին, Կ-Պոլիս դիմեցին և հրովարտակ հանել տուին, թէ Հայոց* ամէնայն Քուտէսին Ֆախոսէյէ և էօրէանց դօրթոն ոըէյէ։ *Պալըրքէսիրցին և ընկերները, առանց ընդդիմանալու այս կործանիչ հրամանին, խորհեցան նախ* վօնօռէլ դէէղչէյէ վանքն սուրբ Փրկչէ (ՀՆՆ. 131)։ *Հազիւ թէ այդ գործը լսուեցաւ, միաբանք և ժողովուրդք այլայլմէ եղած չփոթեցան, և նեղ ժամանակին մէջ Կոլոտին դիմեցին իւր հեղինակութեամբ և ստացած յարգանքովը ընդդիմանալ այդ ձեռնարկին և տէր կանգնիլ ազգային սեփականութեանց։ Պարտատէրներուն ալ դիմեցին կողկողագին, որոնք տեսնելով ընդհանուր յուզումը և արցունքը՝ հաւանեցան սպասել, միայն թէ կ'ըսեն* Դեղին հոսոտարէմ էրոչէօսոր տօսէ, որ և Դէ նոր հոսոտորըվ տոցօսէ յէղ օսէօս էնղ ժամանէ (ՀՆՆ. 132)։ *Այն ատեն ամէնքը կը բռնադատեն Կոլոտը երաշխաւորութիւնը յանձն առնուլ, պարտատէրներն ալ կը հաւանին, տեսած ըլլալով անոր ուղղամտութիւնը և աթոռին համար անկեղծ աշխատութիւնները։ Կոլոտ զիջաւ, և չորս տարւոյ պայմանաժամով մասամբ վճարելու պայմանով,* հէօճէթ որորէն ոսոջէ դոտոորէն, *և կուսակալն ալ գոհ մնալով վարդապետը պատուասիրեց և* խիլայէոլ յօղօոէրէոց (ՀՆՆ. 133)։ *Կոլոտի առաջին գործը եղաւ Ս. Յարութիւն տաճարին մէջ գոհարանական աղօթքներ ընել՝ ձեռք ձգուած յաջողութեան համար, և անկէ վանք դառնալով միաբանները հաւաքել, և նորանոր փոխառութեանց դուռը փակելու համար կոտրել և ջնջել պաշտօնական կնիքը՝* յօրոյ Վէրոյ Ֆըէոլ էր անոն օրքոյ աըոոյն, *և որով* ըմօորհոյօ դօրտոոյն կնէէն, *և որ* հօոորօլ կնէ կամ օրըոյէ կնէ կ'անոոսնէր (ՀՆՆ. 135), *այլ Կոլոտ* կնէ դօրտոոց *կ'անուանէ զայն* (ԿՈԼ. 172)։ *Անհատական անուն չկար կնիքին վրայ, որով ոչ ոք անձնապէս պատասխան կը սպասէր, և* էկնէօղոց ֆօղ Դի չէր ճնոյր, *անոր համար ամէն փոխանորդներ և մատակարարներ* անխօրոդէօ դքօղօմ Բէրկօէօէօ մօհրէին (ՀՆՆ. 135)։ *Այդ ամէնը կը պատմէ Հաննա, որ գործին մասնակից է։ Եղելութիւնները տեղի ունեցան 1714'ի վերջերը, ուսկից ետքը 1715'ի սկիզբները Կոլոտ Երուսաղէմէ մեկնեցաւ Կ-Պոլիս գալ, և ազգային մեծամեծներուն եղածը իմացնել և ընկերքնին ցուցնել։*

**1916**. *Երբոր Երուսաղէմի մէջ այս անցուդարձերը տեղի կ'ունենային, Էջմիածինի մէջ աթոռը կը գտնուէր թափուր Աղեքսանդրի մահուամբ։ Իրեն գործերէն շատ մանրամասնութիւններ չունինք, և այս պատճառով ժամանակակից եղելութեանց վրայ ընդարձակուած ատեննիս, իրեն գործունէութենէն շատ բան չկրցանք յառաջ բերել։ Գիտենք որ* ըհօյըէնէօ և դքօրէկօմօ էօր *մխիթարելու նպատակով 1711 հոկտեմբեր 12'ին Նոր Ջուղա է եկած, և ութն ամիս այն տեղ ատեն անցնելէ ետքը 1712 յունիս 17'ին Էջմիածին դարձած։ Գրուած է թէ* կօբօղէկօոօօբէօն օօրօ էղէօ կօըէ օֆտօկօր, օղ Դիոյն օօկօ օղֆէն, օ.ւ և վօոն օրքոյ Էջմիածնէ (ՏՑՈ. Ա. 35)։ *Երեւանեցին ալ կը վկայէ թէ եղեւ* հօնճօրէղ և չէնօրօր, դքօղօմ հնօցէոլ չէնօօմօ նօրօֆէոց, ըյմրոն օէղոնօտօոնն վէրօնօրօֆէոց, ըոյֆէն Սրքոյն Հօէֆօէդօյ Դէծօցօյց և դօրօղէոց,

[illegible] (ՁԱՄ. 27)։ Ինքն ալ 1713 յունիս 4ին Մովսէս Ջուղայեցիին կը գրէր, թէ [illegible]. և տեսը տեղ բացուած չի-նութիւններուն կարգին կը յիշէ Նոր-Ջուղայի այգին, Օշականի մուլքը, և մեծ տուն (ՏՑՈ. Բ. 85)։ Բայց տակաւ կը տկարանար Աղեքսանդր, և 1714ին իր վախճանը մօտալուտ տեսնելով գրաւոր կտակ մըն ալ կը պատրաստէ, որով կը յայտնէ, թէ Նահապետի օրէն միացած պարտքերն ալ վճարած է, [illegible]։ Իրեն յաջորդ կը ցուցնէ Ջուղայի առաջնորդութեան մէջ իր յաջորդ Մովսէս Ջուղայեցին, վստահացնելով թէ [illegible]. Թէպէտև կը յաւելու թէ [illegible], և կը վերջացնէ օրհնութեամբ, [illegible] (ՏՑՈ. Բ. 36)։ Կտակին ամսաթիւր չկայ, բայց մահուանէ շատ առաջ պիտի չըլլայ, զի 1714 նոյեմբեր 19ին Մովսէս Էջմիածին կը հրաւիրուի կաթողիկոսանալու նպատակով (ՏՑՈ. Բ. 50)։ Իսկ Աղեքսանդր կը վախճանի նոյեմբեր 22ին (ՏՑՈ. Բ. 37), և կը թաղուի [illegible] (ՁԱՄ. 27)։ Աղեքսանդր Ջուղայեցի ուսումնական և գործունեայ և խոհական և շինարար, պատկառելի դէմք մըն է կաթողիկոսներու շարքին մէջ, թէպէտև կենսագրական մանրամասնութիւններով հարուստ չըլլան իր վրայ եղող յիշատակարանները։ Ազգային եկեղեցւոյն մասին իր հաստատամիտ և անխարդախ ուղղութեան համար բաւական ըլլայ պապին գրած նամակին մասին տուած վերլուծութիւնիս (§ 1897)։

# Տ. ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ Ա. ՀԱՄԱՏԱՆՑԻ

**ՄՈՎՍԷՍ ՋՈՒՂԱՅԵՑԻ**

**1917**. Վերջին տասնեակ Մայրաթոռոյ միաբանութիւնք բնաւորութեան տէր էր դարձած, ազգային իշխանութեան և ներկայացուցչութեան դերը ընձեռուած ըլլալով, և նա ալ դիւրաւ կը հետևէր նախորդ կաթողիկոսէն յայտնուած միտքին։ Այս անգամ ալ նոյն ճանապարհն բռնուեցաւ, և Մովսէս Ջուղայեցին, որուն արդէն Աղեքսանդր չմեռած հրաւէր ուղղուած էր, կրկին կոչուեցաւ գալ Էջմիածին և կաթողիկոսական աթոռը գրաւել։ Ջուղայի առաջնորդներուն կաթողիկոսութիւնը՝ Ջուղայեցւոց ալ հաճոյանալու հետևանքը կ'ունենար, որոնք կարող և ունեւոր դիրք ունէին, և հարկաւ անոնց օժանդակութեամբն էր որ կաթողիկոսներ շինարար կը դառնային, թէ ոչ ուրիշ կողմեր աղքատութիւնն ու կարօտութիւնն էր որ կը տիրէր։ Կը կարծենք թէ Մովսէս միակ օրինակն է պատմութեանս մէջ, որ պաշտօնապէս կաթողիկոսութեան կոչուելով, հրաժարի և յանձն չառնու զայն ստանձնել։ Եղան կաթողիկոսութենէ հրաժարողներ, բայց զայն վարելէ և տկարութեան կամ դժուարութեան հանդիպելէ ետքը։ Մովսէսի յայտնած դժկամակութեան շարժառիթ չեն համակերպած Մայրաթոռոյ միաբանները, վասն զի [illegible], և պահանջած յանձնառութիւնը, այլ Մովսէս ամփոփուած միացած է իր միտքին վրայ, և շնորհակալ ըլլալով իրեն հանդէպ յայտնուած սիրելութեան, վճռապէս պատասխանած է. [illegible] (ՏՑՈ. Բ. 50)։ Ինչ էր Մովսէսի դժկամակութեան ներքին պատճառը դժուար է ճշդել, զի ապիկար և գործէ փախչող մէկը չէր, և բազմաշխատ և բազմարդիւն անձ մը եղած էր Պարսկաստանի աթոռին վրայ։ Աղեքսանդրի իր կտակով յայտնած վկայութիւնն ալ (§ 1916) մեծ

*երաշխաւորութիւն մըն է, համբաւն ալ ամէն կողմ տարածուած էր, որ Յովհաննէս Կոլոտ ալ պատուագիր և գովասանական բացատրութիւններով անոր կը դիմէր Երուսաղէմի գործին համար* (ՏՑՈ. Բ. 51)*։ Տկարացած և անկարող դարձած ալ պիտի չըսենք, զի թուականնէս ետքը տասը տարի ևս վաստակաւոր պաշտօնավարութիւն ունեցաւ Ջուղայի աթոռին վրայ մինչև* 1725 *մարտ* 1*'ը, որ է իր մահուան թուականը։ Պէտք է ըսել թէ Մովսէս իր գտնուած միճակէն գոհ, և Ջուղայի վանքին վրայ թափած աշխատութիւնը և ստացած արդիւնքները կիսատ թողուլ չուզելով, և բարձրագոյն աթոռի ծանրագոյն տաղտապանքներէ խորշելով, չէ ուզած իր խաղաղ դիրքը Էջմիածնի խռովեալ դիրքին հետ փոխանակել։ Իր ժամանակին երկու եպիսկոպոսներու և* 17 *նշանաւոր վարդապետներու անուններ կը տրուին Ամենափրկչի վանքին մէջ, և* 62 *քահանաներու ներկայութիւնը կը վկայուի Ջուղայի* 14 *եկեղեցիներու համար* (ՏՑՈ. Բ. 51)*։ Սակայն կարծես թէ բարեբաստիկ չեղաւ Մովսէսի ծանրագոյն տաղտապանքէ խուսափիլը, զի ոչ նուազ տագնապներ կրեց Ջուղայի մէջ Աֆղաններուն ասպատակելուն և Ասպահանի տիրապետելուն պատճառով։*

**1918.** *Երբոր Մովսէս վճռական կերպով ընտրութենէն հրաժարեցաւ, Մայրաթոռոյ միաբաններ պարտաւորուեցան ուրիշի վրայ դարձնել աչուրնին, բայց նորէն Ջուղայի միաբանութենէն չհեռացան, և վերև յիշուած Ս. Ամենափրկչի միաբան երկու եպիսկոպոսներէն Աստուածատուրը* (ՏՑՈ. Բ. 51) *յառաջ կոչեցին, հարկաւ նոյն ինքն Մովսէսի յանձնարարութեամբ, և ըստ այսմ անոր վրայ կատարուեցան պաշտօնական գործողութիւնները, և նա պետական հաստատութիննն ալ ընդունելով Էջմիածին եկաւ* 1715 *մայիս* 7*'ին* (ՋԱՄ. Գ. 768)*, որ է Յինանց երրորդ չաքաթ օրը՝ և զուգէ յետադայ օրն ալ Կարմիր կիրակէին օծումը ստացաւ* (ՇԱՀ. Ա. 225)*։ Աստուածատուր Համատանցիի նախընթացին վրայ ընաւ տեղեկութիւն չունինք, և պիտի չկարենանք որժանապէս*

ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ ԸՆՏՐՈՒԱԾ

*ներկայել։ Իր պաշտօնավարութեան ընթացքին մէջ՝ գրուած աթոռին անարժան չգտնուեցաւ։ Երեւանեցին կը յիշէ զայն* իբր այր հեզաբարոյ և հոգելից, ծերահասակ և գեղեցկատես, քերթողական և արդարասէր, որ արար զբազում բարերարութիւնս, կրեաց և զբազում նեղութիւնս և չարչարանս (ՋԱՄ. 27)*։ Իր ձեռամբ կատարուած մայրատաճարի նորոգութիւններէն կը յիշուին, Իջման տեղւոյն մարմարեայ շինուածը, որ կը ցուցնէ թէ այնպէս չէր Եղիազարի նախնական շինութիւնը* (§ 1810)*, աւագ խորանի նորոգութիւնը, եկեղեցւոյ սիւներուն վերաշինութիւնը, և գետնին սալայատակութիւնը, տընտեսատունի շինութիւնը, և անոր մէջ ջրհոր բացուիլը, ինչպէս նաև կալուածներէն մի մասին պետական մուհրագիրերով ապահովուիլը* (ՋԱՄ. 28)*։ Աստուածատուրի այդ շինարար գործերը կը գրուեն նորա հայրապետութեան առաջին հինգ տարիները մինչև* 1720*, զի անոնցմէ ետև պատերազմական շփոթները հնչեցին, և դրացի բանակներ իրարու դէմ ելան, և Էջմիածին ալ նեղուեցաւ ու տառապեցաւ, ինչպէս հետզհետէ պիտի պատմենք։ Աստուածատուրի դաւանական ուղղութեան մասին ալ սովորական յանդերգը կը կրկնուի, թէ* 1717*'ին պապին* գրեաց զնոյն հնազանդութեան թուղթ և զնոյն գովասանս սուրբ եկեղեցւոյն Հռոմայ*. սակայն միայն մէկ մը այս յիշատակութիւնը կ'ընէ* (ՊԼՃ. 263)*, և ուրիշ հռոմէական գրիչներն ալ չեն համարձակիր կրկնել, որով կասկածելի կը դառնայ սոյն մէկին գրածը։ Պատճէնն ալ մէջտեղ չկայ՝ որ բուն պարունակութիւնը գիտնայինք, և եթէ գրած է, հաւանաբար Աղեքսանդրի գանգատին* (§ 1897) *կրկնութիւնն է Լատին քարոզիչներուն դէմ, և եթէ մէջը գովասանքի խօսքեր կան՝ դաւանական նշանակութիւն չեն ունենար։ Իսկ հնազանդութիւն ըսուածն ալ՝ իր անձը նուաստացնող և դիմացինը բարձրացնող խօսքեր կ'ըլլան, ինչպէս նման պատճէններու մէջ կը տեսնենք։ Կը գտնուի նաև* 1718 *յունիս* 19*'ին Աստուածատուրէ գրուած կոնդակ մը Վենետիկ գտնուող Ջուղայեցի և ուրիշ վաճառականներուն, որ Էջմիածնի համար,* տանի մի բեկանել, զոր և այլ շուշեղէն հոգան (ՏԱՇ.

1030), *որուն մէջ բնաւ Հռոմի կամ հռոմէականութեան պատկանող խօսք չկայ։ Դառնանք նորէն Կոստանդնուպոլիս։*

**1919.** *Յովհաննէս Գանձակեցի պատրիարք ընտրուած էր 1714 մարտ 21'ին,*

LԱՏԻՆԱՄԻՏ ՋԱՆՔԵՐ

*Աղեքսանդրի մահուանէն 8 ամիս. իսկ Աստուածատուրի կաթողիկոսութենէն 14 ամիս առաջ, սակայն կամաւ անոր գործերուն մասին խօսիլը յետաձգեցինք* (§ 1914), *չարայարեալ գործողութիւնները չընդհատելու համար։ Հազիւ թէ Գանձակեցին գործի ձեռնարկեց, երկու պարագաներ եկան կացութիւնը գայրացնել. մէկը Լատիններուն կողմէ իրենց հետեւողներու վրայ բռնադատութիւնը՝ Լատին եկեղեցի երթալու և Հայոց եկեղեցիներ չերթալու, և միւսը Օսմանեան կառավարութեան ցուցած Լատինաց հետ բարեկամութեանց և մտերմութեանց դէմ խըստութիւնը, Վենետկեցւոց հետ յարաբերութեանց խառնակելուն և մօտալուտ պատերազմի հաւանականութեան պատճառով։ Գանձակեցին խոհական կերպով նախապէս* ուղղ տեսոյ Նոյն և յորդորեց զնոսա զուշ լինել իւր (ՁԱՄ. Գ. 757), *որպէսզի կառավարութեան կասկածներուն տեղի չտան, քանի որ իրեն վրայ ալ ստիպում կ'ըլլար իւր ժողովուրդին ընթացքին վրայ հսկել։ Անսացողներ եղան, բայց Լատին քարոզիչներ սկսան աւելի եւս սաստկացնել իրենց արգելքը, խիղճերը պղտորել և ընտանիքները խռովել։ Կը կարծէին թէ Հայոց պատրիարքարանին վրայ կրնան յաղթութիւնը տանիլ դեսպանական հովանաւորութեամբ, զի Ֆերիօլի յաջորդը Պետրոս Տէզալլէօր կոմսը* (Pierre-Puchot comte Desalleurs), *իւր նախորդէն նուազ չէր կրօնամոլ ընթացքին մէջ, թէպէտ անոր պէս մոլեգնութեան չէր հասներ։ Գանձակեցին Լատին եպիսկոպոսին ալ ղրկեց իւր փոխանորդը, որպէսզի իւր եկեղեցականները չափաւորութեան խրատէ, և կառավարութեան տրամադրութիւնները յիշեցնելով զգուշացուց տհաճոյ հետեւանքներէ։ Ընդհակառակն Լատին եպիսկոպոսը իւր գլուխը կը ժողովէ Հայերուն մէջ հռոմէականութեամբ կրթուած կամ հռոմէականութեան չահուած եկեղեցականները, և անոնցմով որոշում կու տայ* ի ելոյն ժամու զէրոն, *պատրիարքը պաշտօնէ ձգել, իրենցմէ մէկը պատրիարքութեան բարձրացնել, և այս նպատակով գաղտնի կերպով և խոստովանահայրերու միջոցով իրենց հետեւողներէն դրամ հաւաքել, պաշտօնական և անպաշտօն ծախքերու համար։ Լատին եպիսկոպոսին հրամանատարութեան ներքեւ՝ Հայոց պատրիարքարանին դէմ մաքառելու պատրաստուող խումբին կ'առաջնորդէր Մելքոն Թասպասեան եպիսկոպոսը* (§ 1895), որ կամէր զի ինքն լիցի առաջնորդ և դատաւոր (ՁԱՄ. Գ. 758)։ *Իրեն կը հետեւէին Յովհան Նիկոմիդացի, և Սարգիս ու Երեմիա եպիսկոպոսներ, Յովսէփ Պէչիքթաշցի վարդապետ և Աստուածատուր Պարսկաստանցի քահանայ՝ իբրեւ շարժումին գլխաւորներ։ Կառավարութիւնը տեղեկութիւն ստացաւ այդ եղելութեանց մասին, որոնց հանդէպ անտարբեր չէր կրնար ըլլալ, և թողուլ որ հպատակներէն ոմանք օտարի թելադրութեամբ և գլխաւորութեամբ իրեն հպատակ հասարակութեան դէմ գործեն։ Եպարքոսը պատրիարքին* դատապարտեաց մի ամէն տեսել էին, *և վերեւ յիշուած երեք եպիսկոպոսները ձերբակալել տալով,* եւ յանձանձն փեղոյն որրեց, էբր է բանդէ, *Լատիններու հետ միաբանեալներ՝ կարծելով թէ պատրիարքին գործն է երեք եպիսկոպոսներուն անյայտանալը, հարիւր հոգիի խումբ մը կազմեցին և եպարքոսին վրայ բողոքի ղրկեցին՝ պատրիարքը ամբաստանելու, չգիտնալով թէ եպարքոսն ինքն է խաղին հեղինակը* (ՁԱՄ. Գ. 759)։

**1920.** *Տամատ Ալի եպարքոս բողոքողները կ'ընդունի, կը լսէ բողոքը, և կ'ըսէ թէ գործը իմացած է, և թէ այն Երուսաղէմի հաչիներու խնդիր մըն է՝ պատրիարքի և յիշեալ եպիսկոպոսներու հետ, որոնք երեք ընկեր եւս ունին եղեր, թող անոնք ալ բերեն որ դատը տեսնէ, և երաշխաւորութիւն առնելով բողոքողները կ'արձակէ։ Ամբոխը կը հաւանի, բայց միւս երեքը, զորս Լատին եպիսկոպոսը պահած էր, մէջտեղ չեն ելլար։ Այն ատեն ամբոխը Լատին եպիսկոպոսին կը դիմէ, կը սպառնայ որ գիրենք մէջտեղ*

ՊԵՏԱԿԱՆ ԴԱՏԱՍՏԱՆ

նետեց, և այժմ վտանգի կ'ենթարկէ. որով նա կը պարտաւորուի մէջտեղ հանել երեք պահուըտածները, զորս երաշխաւոր ամբոխը եպարքոսին կը ներկայացնէ, և անոնց հետ Յովհան Նիկոմիդացի եպիսկոպոսն ալ, զի Սարգիս և Երեմիա լատինամիտ եպիսկոպոսներ բանտին մէջ խղճմտութիւն ընդունելով գործէն հրաժարած էին։ Պատրիարքն ալ ատեան կը կանչուի, ուր իր գանգատը կը յայտնէ։ Բայց անիկայ՝ եպարքոսին յերիւրած պատճառանքին մասնակից չէր, ուստի պարզապէս կը յայտարարէ թէ Լատիններ մէջտեղ ելած են իր ժողովուրդը օտարացնել, կ'արգելեն Հայ եկեղեցին գալ, կը յորդորեն պատրիարքարանի տուրքերը չտալ, և կը ստիպեն իրենց եկեղեցիները երթալ և տուրքերը իրենց վճարել։ Կ'աւելցնէ թէ այս չորսերն ալ անոնց գործակատարներն են։ Եպարքոսը միւսներուն դառնալով բացատրութիւն կը պահանջէ, և Թասպասեան ամէնուն կողմէ պատասխանելով կը սկսի ըսել. Պատճառն, որոյ վասն մեք ոչ ճողոպրեմք... Եպարքոսը խօսքը կ'ընդհատէ, և չներեր շարունակել, որովհետեւ ոչ ճողոպրեմք յայտարարութիւնը՝ կատարեալ խոստովանութիւն կը նկատէ, և իբր օտարներու և կառավարութեան թշնամիներու ձեռնտուներու՝ քրէական յանցապարտութեան և թիապարտութեան վճիռ կ'արձակէ վրանին։ Այսպէս Մելքոն և Յովհան եպիսկոպոսներ, Յովսէփ վարդապետ և Աստուածատուր քահանայ, թիապարտներու բանտը կը փակուին 1714'ին վերջերը, գոնէ յայտնի ամբաստանութեամբ և դատական վճռով, և ոչ Աւետիքի պէս նենգաւոր յափշտակութեամբ և գողունի գործողութեամբ։ Թիապարտներէն վերջին երեքը՝ իբր հետեւողներ՝ դրամական միջոցներով ազատութիւն կը գտնեն, միայն Մելքոն եպիսկոպոս, իբր շարժումին գլուխ՝ երկու տարիի չափ բանտը կը մնայ և հոն կը վախճանի։ Այդ միջոցին իբր գործակից դատապարտուած են նաեւ Մելտոն Պալաթցի և Զախմախօղլու անուն անձեր, որոց առաջինը ուրացութեամբ և երկրորդը դրամով ազատութիւն են ստացած (ՋԱՄ. Գ. 761)։

**1921**. Այդ դատաստանն ու անոր ելքը, և Լատիններուն բռնած երկդիմի ընթացքը, նոյն իսկ իրենց հետեւողներէն շատերը իրենցմէ պաղեցուց. եպարքոսական հրամաններն ալ կրկնուեցան օտարասիրութեան առաջն առնելու համար.

**ԳԱՒԱՌՆԵՐՈՒ ՄԷՋ**

գաւառներն ալ հրամաններ տրուեցան այդ մասին հսկելու, և գլխաւորները զսպելու։ Այդ առթիւ շատեր ձերբակալուեցան, որոնցմէ Աբրահամ Արծիւեան եպիսկոպոսը (§ 1896) Բերիայէ Կ-Պոլսոյ թիարանը բերուեցաւ. իսկ Գրիգոր Եւդոկիացի վարդապետը, և քանի մը Կարնեցի քահանաներ, տեղւոյն վրայ բանտարկուեցան, բայց տուգանքով ազատեցան (ՋԱՄ. Գ. 761)։ Արծիւեանի համար ալ կը պատմուի, թէ Հրեայ բանտակիցներու միջնորդութեամբ ազատութեան ճանապայ գտած ըլլայ (ԴԻԹ. 44)։ Միայն հաւաստի չէ, որ Արծիւեանի 1717'ին պատրիարքական կոնդակով և պետական հրովարտակով Եղեսիոյ առաջնորդ անուանելուն առթիւ, կաթոլիկութիւն քարոզելու ազատութիւն տրուած ըլլայ (ԿԱԹ. 45), ինչ որ իր 1714'ին Տրապիզոնի առաջնորդութեան առթիւ ալ եղած կ'ըսեն (ԴԻԹ. 38)։ Վասն զի Գանձակեցի պատրիարքին կաթոլիկութիւն զօրացնելու յանձնառութիւնը ենթադրելի իսկ չէ, և գործոց ընթացքը աւելի հաւանական կը ցուցնէ, Արծիւեան եպիսկոպոսին՝ պատրիարքարանի ընթացքին՝ գոնէ երեսանց համակերպիլը, ինչ որ անսովոր չէր որեւէ միջոցներով սողոսկելու և հրապուրելու սահմանուած հռոմէական պաշտօնէից վրայ։ Գաւառներու վրայ տարածուած գործողութիւնները 1714 տարւոյն մէջ սկսած, և յաջորդ տարին շարունակած էին։

**1922**. Թուականներու բաղդատութիւնը շատ մեծ նշանակութիւն ունի եղելութեանց կապակցութիւնը և ներքին շարժառիթը բացատրելու։

**ՊԵՂՈՊՈՆԷՍԻ ՊԱՏԵՐԱԶՄԸ**

Արդ 1714'ին վերջերը Վենետկեցիներու դէմ պատերազմը ծրագրուած և պատրաստուած էր. 1715 յունուարին պատերազմական նշանները կայսերական պալատան դուռը դրուեցան. ապրիլին սուլտան Ահմէտ Գ և Տամատ Ալի եպարքոս՝ մայրաքաղաքէն մեկնեցան, և նաւատորմիղը Թինոս կղզին

գրաւեց. յունիսին Օսմանեան բանակը Պե-ղոպոնէս մտաւ. յուլիսին Կորնթոսի տիրա-ցաւ, և հետզհետէ Նաւպլիա, Քորոն, Նա-վարին, և Մեթոն բերդաքաղաքները ցամաքի վրայ, Չերիկօ և Կրետէ կղզիներ ծովու վրայ՝ Օսմանցիներէ գրաւուեցան, և 1715 նոյեմբերին Վենետկոյ հանրապետութեան տիրապետութիւնը վերջացած էր Պեղոպո-նէսի կամ Մօռայի թերակղզւոյն և Արշիպե-ղագոսի կամ Պահրը-Սէֆիտի կղզիներուն վրայէն: Ճիշդ այդ միջոցներուն էր որ Լա-տիններ իրենց հետևողներուն խիղճին վրայ բռնանալով, և անոնց միտքը պղտորելով, կառավարութեան զայրոյթը կը հրաւիրէին, և այս կերպով իրենք իրենց պաշտպան-եալներուն հալածիչը կը դառնային:

**1923**. Միևնոյն միջոցներուն, այսինքն 1715'ին, զատիկը ընելէն ետքը, որ կը հանդիպէր ապրիլ 17'ին, Երուսաղէմէ Կ-Պոլիս կու գար Յովհաննէս Կոլոտ վարդապետ, և բոլորանուէր ղինքն կու տար Երուսաղէմի կացութիւնը բարւոքելու: Շարունակ ամէն տեղ և ամէն առեն, հրապարակաւ կամ առանձինն, բեմէն կամ բազմոցէն, Երուսաղէմի նեղութիւնները կը պատմէր, վերջին կործանման հասած ըլլալը կը բացատրէր, իր յանձնառու եղած երաշխաւորութիւնը կը յայտարարէր, և անմիջական դարմանի և զուարթառատ օգնութեան պէտքը կը զգացընէր: Ասոնցմէ աւելի արմատական կարգադրութեան մը անհրաժեշտութիւնը կը ցուցնէր, Երուսաղէմը ազատել տիրող գիրքէն, անոր սեփական տէրն ու գլուխը տալ ըստ առաջնոյն, Կ-Պոլսոյ պատրիարքարանին ուղղակի միջամտութիւնը խափանել, մէկ խօսքով պատրիարքութեանց միաւորութիւնը ջնջել, և Կ-Պոլսոյ դերը վերին հսկողութեան մէջ սահմանափակել: Այդ քարոզութիւնները և յորդորները կը խօսուէին Յովհաննէս Գանձակեցի պատրիարքին աչքին ներքեւ, որ բնաւ արգելք և դիտողութիւն չէր դիմադրեր: Որչափ ալ նա Յովհաննէս Պալըքէսիրցին Երուսաղէմ ղրկելու սխալը գործած էր (§ 1914), սակայն կ'երեւի թէ միամտաբար սխալած էր, վասնզի այլեւս ոչ բրածը կը պաշտպանէր և ոչ ալ Կոլոտին ձեռնարկին արգելք կը դնէր: Կոլոտի յորդորները սկսան ժողովուրդին համակրութիւնը գրաւել, և մեծամեծներուն մտադրութիւնը հրաւիրել, որոնք հետզհետէ իրեն ձեռնտու ըլլալու հաճութիւնը տուին, և որոնց մէջ յանուանէ կը յիշուին Յարութիւն Մուրատեան Ապուչեխցի, Յարութիւն Թէվէքէլեան Ապուչեխցի, Սարգիս Խալֆա Կեսարացի, Իսրայէլ Կոստանդնուպոլսեցի, և Լութվի, որոնք յաջողեցան իրենց կողմը ձգել նաեւ Սեղբեստրոս Երեւաննեց Ակներցին (ՀՆՆ. 138), աւելի ծանօթ Սեղբոս Ամիրա անունով, ամէնքն ալ հաւատով կոչումով պատուած անձեր, որ է ըսել Երուսաղէմի ուխտը կատարած, և սիրտով Երուսաղէմի սիրով տոգորուած: Ասոնք հաւանեցան Կոլոտի յայտնած պայմաններուն համակերպիլ. բայց ինչպէ՞ս ընել, որ Կ-Պոլսոյ պատրիարք գտնուող անձը անկեղծօրէն ձեռք քաշէ Երուսաղէմի պատրիարքութենէն. ինչպէ՞ս ապահովել, որ Կ-Պոլսոյ պատրիարքը յարգէ Կոլոտի անձնական երաշխաւորութիւնը (§ 1915). զո՞վ Երուսաղէմի պատրիարքութեան կոչել որ Կ-Պոլսոյ պատրիարքին հետ համերաշխ գործէ. և ինչպէ՞ս վստահիլ որ հաւաքելի նպաստներ ամենայն ճշդութեամբ Երուսաղէմի պարտքերուն պիտի յատկացուին: Այդ դժուարութեանց լուծումը պատրաստելու համար՝ խորհեցան նոյն ինքն Կոլոտը Կ-Պոլսոյ պատրիարք անուանել, և Երուսաղէմի պատրիարքի ընտրութիւնն ալ անոր առաջարկութեան թողուլ: Եկ, կ'ըսեն, դու լեր մեզ պատրիարք և առաջնորդ Կոստանդնուպոլսոյ, և յետոյ զոր և կամիս՝ զայն արա պատրիարք Երուսաղեմի, բայց միշտ հաւանութեամբ բոլոր իշխանաց: Կոլոտ տեսնելով որ իր կապած բեռը իր ուսը կ'ուզեն բեռցնել, սկսաւ խուսափիլ և պատճառանօք զլանալ. բայց գլխաւոր խնդիրը գործին տեւողութիւնն էր, որովհետեւ մինչեւ պարտքերուն ջնջուելուն պայմանաժամ նշանակուած չորս տարիներու լրանալը, շատ փոփոխութիւններ կրնային տեղի ունենալ և գործը խանգարել: Ասոր ալ իշխանները պատասխանեցին, թէ մեք բնաւ Աստուծով չեմք, և յորժամ ոչ է օգնական մեզ վասն այսր իրի (ՀՆՆ 138), որ է ըսել, խոստացան բոլոր ուժովնին Կոլոտի պատրիարքութեան տեւողու-

ԿՈԼՈՏ ՊԱՏՐԻԱՐՔ

թիւնը երաշխաւորել։ Կոլոտը պատրիարք ընելու միտքը՝ Գանձակեցիին պաշտօնէ դադարումը կը պահանջէր։ Գանձակեցիին իբր գովեստ, պէտք է դիտել տանք, որ նա չուզեց որ սովորական եղած կերպե- րով, դրամով կամ ամբաստանութեամբ զինքն պաշտօնանկ ընեն, այլ նախկին վե- հանձն ճարտարութիւնը կրկնեց, զոր ցու- ցած էր ընտրութեան առթիւ (§ 1914), և խոստացան կամօքն հրաժարել ի պատրիարքութենէ (ՉԱՄ. Գ. 772)։

**1924**. Այսպէս որոշուեցաւ Յովհաննէս Կոլոտի պատրիարքութիւնը՝ միայն Կ-Պոլսոյ աթոռին անունով, երբ տակաւին յոկ վարդապետ և 37 տարեկան էր (ԿՈԼ. 15)։

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱԹՈՌԸ

Ինքն՝ Կոլոտ ալ Ե- րուսաղէմի պատրիարքութեան համար ա- ռաջարկեց Գրիգոր եպիսկոպոս Շիրուան- ցին, իր հոգեհարազատ և հայրապատիւ ընկերակիցը, որ Մշոյ Ս. Կարապետի ա- ռաջնորդն էր (§ 1910), և բնաւ անցուդար- ձէն տեղեկութիւն չունէր։ Ըստ այսմ ամե- նայն ինչ սիրով և համերաշխութեամբ հաս- տատուելէ ետքը, Խաչվերացի չաբաթա- պահքին ուրբաթ օրը Կոլոտի պատրիարքու- թիւնը հռչակեցին և առժամայն նստուցին յա- թոռն Կոստանդնուպօլսոյ, և յաջորդ շաբաթ օրը, որ էր տօն սրբոյ Յարութեան և Գող- գոթայի, այսինքն Խաչին նախընթաց նաւա- կատեաց օրը, տօնական պատարագին յիշատակութեան ատեն, Կոլոտի տուած հրահանգին համեմատ, ժամարարը բաժա- նաբար յիշեց Երուսաղէմի պատրիարք Գրի- գորը և Կոստանդնուպոլսոյ պատրիարք Յով- հաննէսը. մինչ այն ատեն սովորութիւն ե- ղած էր Կոստանդնուպոլսոյ պատրիարքը երկու աթոռներով միանդամայն յիշել։ Այդ օրէն կը սկսի Երուսաղէմի պատրիարքնե- րուն զատաբար Կ-Պոլսոյ պատրիարքութեան վիճակներուն մէջ յիշատակուիլը, որ ոչ իրաւունքի կամ իշխանութեան և ոչ ալ յատուկ պատուոյ նշանակութիւն ունի, այլ միայն պատմական եղելութեան մը հետե- ւանքն է. Երուսաղէմի աթոռին ալ Կոս- տանդնուպոլսոյ աթոռէն առաջ յիշուիլը՝ պարզապէս Կոլոտի կողմէն իր հայրապա- տիւ ընկերակցին հանդէպ մեծարանքի ցոյց մըն էր, ապա թէ ոչ իրաւասութեան կա- նոնով, տեղական իշխանութիւններ և ուղիղ գերիշխանութիւններ նախապատուութիւն կը վայելեն։ Բայց սկսուած սովորութիւն մը կը շարունակէ, և շարունակելով օրէնք կը դառնայ։ Այդ նշանաւոր եղելութեանց թուականը 1715 յիշուած է (ՍՐԳ.), իսկ ամսաթիւը Հաննա պատմագիր սեպտեմբեր 12, և սեպտեմբեր 13 կը դնէ (ՀՆՆ. 139). սակայն եօթնեկի և տօնի օրերը 1715'ին սեպտեմբեր 9'ին և 10'ին կը պատասխա- նեն, և պատմագիրը կամ ընդօրինակիչը թուրիմացութեան ինկած պիտի ըլլանք։ Ուրիշի կողմէն ալ սեպտեմբեր 16'ին և 17'ին տանելու ուղղութիւնն ալ (ՉԱՄ. Գ. 772), տօնական յիշատակին չյարմարիր։ Պատ- րիարքութեանց բաժանումը խնդութեամբ ընդունուեցաւ ժողովուրդէն, որ երկու նոր- ընտիրներուն առանձնած ծանր բեռը նկատի առնելով կը մաղթէր. Տէր օգնեսցէ նոցա (ՀՆՆ. 139)։ Գանձակեցիի ընթացքին մասին հե- տեւեցանք Չամչեանի և ուրիշներու գրա- ծին (01 ՕՐՍ. 128), և կամաւ հրաժարիլը գրեցինք (§ 1923)։ Սակայն Երուսաղէմի նոր պատմագիրը, չենք գիտեր ուստի քաղելով կը գրէ, թէ Գանձակեցին Պարսկաստան փախած ատեն ձերբակալուեցաւ և բան- տարկուեցաւ, և Կ-Պոլսոյ պատրիարքութե- նէն զրկուեցաւ. բայց Երուսաղէմի պատ- րիարքութիւնը վրան մնաց, որով շփոթեցան ազգս, եկեղ և վանորայք զինչս և զպարգևսա- եկեղեցեաց և վանորէից, մինչև որ պարտապար- տեցան ի պարտս պարտականք (ԱՍՏ. Ա. 440)։ Մեր տեսութեամբ թիւրիմացութեան հետե- ւանք պէտք է ըլլայ այս դարձուածը, որով- հետեւ Հաննա որ ականատես և գործակից էր, այդպիսի պարագաներէ տեղեկութիւն չունի, Երուսաղէմի ինչքերուն նոր վատնող մը չճանչնար, թող որ անիմանալի է Կ-Պոլ- սոյ աթոռէն գահընկէց եղած և բանտարկ- ուած պատրիարքին Երուսաղէմի աթոռը կարենալ պահելը և անով գեղծանիլը։ Ուս- տի անհնար կը տեսնենք կարեւորութիւն ընծայել այդ վերջին պատմութեան։

**1925**. Սակայն կատարուած գործողու- թիւնը և նոր պատրիարքներու հռչակուիլը ազգային շրջանակի մէջ եղած գործ էր, և դեռ իր պաշտօնական և իրական լրումը

չունէր. ուստի պետական հաստատութիւն ստանալ պէտք էր, և Երուսաղէմի պատրիարք ընտրուած անձը

**ՊԵՏԱԿԱՆ ՎԱՒԵՐԱՑՈՒՄ**

գործին գլուխը անցընել։ Մինչև որ այս գործողութիւնները լրացան, մի տարի և ութն ամս ասեն անցած է Հաննայի հաշուով (ՀՆՆ. 140)։ Գրիգոր Շիրուանցին հաճեցնելու համար ալ նամակներ գրուեցան, և անոր դժկամակութիւնը յաղթելու համար հրովարտակին առնուելէն ետքն իսկ հարկ եղաւ Աստուածատուր կաթողիկոսին գրել, և է յետոյ վերադարձեալ մեզ գիրերը յղել. և հազիւ թէ երբ կաթողիկոսը խորով հարկեցուցին հրամանաւ հարկադրելոց, խոնարհեցաւ Գրիգոր, մինչ եւս ընդհանրական հարկադրութեանն թագաւորին թողացուցեալ խորոյ։ Սակայն այդ կերպով Գրիգորի յանձնառութիւնը երկու տարի ուշացաւ (ՀՆՆ. 143)։ Պաշտօնական գործողութեանց, և երկու պատրիարքութիւնները իրարմէ բաժնելու, և նոր ձեւով հրովարտակներ պատրաստել տալու համար բաւական դժուարութիւններ ելան. բայց Հաննա իսկ չմանրամասներ, թէ զորքան նեղութիւն և անձկութիւն կրեցին, և զորքան դրամս ծախեցին՝ գործին վրայ կեցող իշխանաւորները։ Պէտք եղաւ որ Կոլոտ անձամբ Ադրիանուպոլիս երթայ, ուր էր սուլտան Ահմէտ Գ., և իրեն հետ գացին մեծամեծներէն Մելիտոն Արապօղլու Կեսարացի, Յարութիւն Հովուեանց, և միւս Յարութիւն Սեղբոսի ընկերը, և ուրիշներ, որոնց գործակից եղաւ Ադրիանուպոլսոյ առաջնորդ ծերունի Աբրահամ վարդապետ (ՀՆՆ. 140)։ Եթէ հրովարտակներուն ստացութեան ժամանակը Կոլոտի Երուսաղէմէ մեկնելէն 20 ամիս պիտի հաշուենք Հաննայի ցուցածին համեմատ (ՀՆՆ. 140), 1716 նոյեմբերին պիտի դնենք անոնց ստացութիւնը, և 1717 տարւոյ Ծնունդի օրերուն կը մնայ մեծահանդէս ժողովն Մայր եկեղեցւոյն մէջ, զոր Կոլոտ հաւաքեց Ադրիանուպոլսէ դառնալէն ետքը։ Անկէց ետքն է Աստուածատուր կաթողիկոսին եղած դիմումը, և Գրիգորի վերջնապէս համակերպիլը, և Մուշէ մեկնելով Կ-Պոլիս հասնիլը 1717'ին ի յաւուր տօնի Վերափոխման (ՀՆՆ. 143), օգոստոս 18'ին։ Ինչպէս կը տեսնուի, շատ երկարատեւ եղաւ Կոլոտի յղացած խորհուրդին գործադրութիւնն ու աւարտը, և պարտքերուն վճարման համար պայմանաւորուած չորս տարիներէն երկուքուկէսը ապարդիւն անցան։

1926. Այդ յապաղումը ստիպեց երկու պատրիարքակից հին ընկերները ամենայն փութաջանութեամբ գործի ձեռնարկել, իրարու հետ մրցելով՝ սիրով և համերաշխութեամբ։

**ԳՐԻԳՈՐ ՇՂԹԱՅԱԿԻՐ**

Սրտաշարժ են Կոլոտի՝ Գրիգորը դիմաւորելու առեն խօսած ողջունի խօսքերը. Ո՜վ սուրբ տեղեաց դասապետ, խոնարհեցար և եկեր, երեսս է հող և մոխիր, ծնողդ որ եկեր, և այս խօսքերով ու արտասուելով ընդ ժամս անոր կը փարի ու կը համբուրէ (ՀՆՆ. 143)։ Գրիգոր որչափ առաջուց դժկամակ, նոյնչափ և աւելի բոլորանուէր եղաւ ստանձնած պաշտօնին, և յանձն առած գործին, որ է Երուսաղէմը փրկանաւորել իր պարտքերէն և զայն պայծառացնել նորանոր կարգադրութեամբ։ Իբրև նշանակ իր անկեղծաւոր անձնուիրութեան, եթէ ի դարանոյն խոր ըղնաւոր երկաթից գերեաւորս, և փոխեաց զայն ողխեաց ամբոխանեաց, ոտնահարեալ ընդ Աստուած, ու հանել զայն ի դարանոյն խորի, մինչեւ այդ արասցէ նոյն ինքն պատուեցելոյ ազգս Հայոց, և որպէս զարդուր յամենայն ազգս, և բարձրէ ընկալեալ յաղագս մեր, թեթեւացուցանելով զմենաւորութեան բարդուած ծանրաբեռն գործոց (ՀՆՆ. 146)։ Գրիգորի իր վիզը անցուցած երկաթեայ շղթայի անունն է, որ անոր տուաւ Շղթայակիր և այլազգօրէն Զինճիրլի մականունը, որով սկսաւ կոչուիլ ամէնէն, և որ իրեն վրայ իբրև հաստատուն մականուն մնացած է պատմութեան մէջ։ Գրիգորի պատրիարքութիւնը ստանձնելուն թուականը, իր կնիքէն քաղելով պէտք է դնել 1717'ին (ԿՈԼ. 61), թէպէտ շատեր կը գրեն 1718'ին, որ թերեւս անուրը վիզն անցընելուն թուականն է, թէպէտ օրը չկարենանք ճշդել։ Գրիգոր անուրը վիզը անցընելով իր վրայ կ'ուզէր անձնաւորել Երուսաղէմը, այսինքն Երուսաղէմի Հայ աթոռը, որ ծանրակշիռ պարտուց ներքեւ ինկած (ՀՆՆ. 145), և բոլոր իր ստացուածներովը պարտատէրներուն երաշխաւորութեան մատ-

*նուած, տիրապէս վաճառելու գերի մըն էր անոնց ձեռքը, և բոլոր իւր ազատութիւնը կորսուած: Երուսաղէմի աթոռին այս գերութիւնը կը պատկերացնէր Շղթայակիրը իւր գերեւորս անուրովը: Գրուած չենք գտներ թէ ինչ ծանրութեամբ և ինչ չափով օղակ մըն էր Գրիգորի իւր վիզին վրայ ողջ-խէտ ամբոփանէտ պնդած անուրը, զոր երկար տարիներ վիզէն չհանեց: Ինչպէս օրինակով Երուսաղէմի աթոռին գերութիւնը անձնաւորած էր Գրիգոր, նոյն ոճով ալ կը խօսէր միշտ, և տօն օրեր եկեղեցւոյ դրան առջեւ կանգնած, Երուսաղէմի բերնէն ողբագին կը կրկնէր. Ողորմեցարուք, ողորմեցարուք ինձ, հաւատացեալք Քրիստոսի, զի ձեռն իմ է գրեալ ե., և որդիք իմ հեռացեալ են յինէն, և ես մատնեալ եմ ի գերութիւն. ողորմեցարուք ինձ* (ԱՍՏ. Ա. 441): *Երկու պատրիարքներուն ձեռք ձեռքի տուած քրտնաջան ճիգերը իրենց արդիւնքն ունեցան, զի երկուքին քարոզութիւնները, Գրիգորի անձնուիրութիւնը, Յովհաննէսի հովանաւորութիւնը, և մանաւանդ անոնց առաքինի և անձնուրաց օրինակը՝ ամէնքը վառեց Սուրբ Տեղեաց բարեպաշտութեան, և նպաստներ ու նուէրներ սկսան առատապէս տեղալ յօգուտ սրբոյ աթոռոյն:*

**1927.** *Գրիգոր պէտք չտեսաւ պատրիարքութիւնը ստանձնելուն պէս իւր աթոռը երթալ, և հոն բարեկարգութիւն հաստատել, վասնզի ամէնէն առաջ պէտք էր պարտքերը թեթեւցնել, կալուածներու և սպասներու և ինչքերու տէր դառնալ, և այդ նպատակին համար Երուսաղէմ գտնուիլը բնաւ օգուտ չունէր. նպաստներ ու նուէրներ ազգին հանրութենէն, և գլխաւորապէս մայրաքաղաքէն պիտի ելնէին, ուստի անհրաժեշտ էր ազգային կեդրոնին մէջ մնալը: Իսկ Երուսաղէմի մէջ կարող և հաւատարիմ փոխանորդի և մատակարարի մը պէտքը կար, ոչ եւս պապայի մը կամ նազրի մը, այլ տիրապէս պատրիարքին փոխանորդին կամ աթոռակալին, և այդ պաշտօնին կոչուեցաւ երկու պատրիարքներուն կոնդակով Յովհաննէս վարդապետ Երուսաղիմացի, կամ արաբացւոց լեզուաւ՝ Հէննէ*

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ՀԱՄԱՐ

*վարդապետ կոչուած* (ՀՆՆ. 145), *և աւելի սովորաբար Հաննա հնչուած* (ՀՆՆ. 2): *Նա Կոլոտի փոխանորդութեան օրէն անոր հաւատարիմ և անխոնջ գործակիցն էր եղած, և ստուգիւ այդ պաշտօնին արժանաւոր անձն էր, և ինքն է այդ եղելութեանց մանրամասնութիւնները մեզի հասցնող պատմաբանը: Նպաստները առատացնելու համար շրջաբերականներ և յորդորագիրներ ուղղուեցան ամէն կողմ, Յովհաննէս պատրիարքի անունով և մեծամեծներու ձայնակցութեամբ, ոչ միայն Տաճկաստանի այլ և Պարսկաստանի վիճակները: Անշուշտ Աստուածատուր կաթողիկոսի ալ դիմում եղաւ նպաստի համար, ինչպէս Գրիգորը համոզելու նպատակով եղած էր* (§ 1825), *և այս յայտնապէս կը քաղուի 1721 հոկտեմբեր 18'ին Աստուածատուրի գրած նամակէն, որով կը հաւանի Կարինէ եւ քաշել Էջմիածինի նուիրակ Մխիթար Գողթնացի վարդապետը, զի գործ ասոյն տանը յառաջեցի, և մին յետոյ լինիցի* (ԱՍՏ. Բ. 8): *Իսկ Պարսկաստանի առաջնորդ Մովսէս Ջուղայեցիի ուղղուած գիրին մէջ, որ Յովհաննէս պատրիարքի և 250 ականաւոր հոգեւորականներու և ժողովրդականներու կնիքները կը կրէր, կը յայտարարուի, թէ յետ սրբոյն կաթողիկոսին մերոյ հօրն հասարակաց, նոյս վեհանջնորհեան տանիմ մեզ հայր և խնամածու և հեղինակ ու ծորեցն շահէզ* (ԱՑՍ. Բ52): *Կաթողիկոսին անունը յիշելնին ալ, նախապէս անոր ալ դիմելնին կը ցուցնէ: Ջուղայի և բոլոր Պարսկահայ քաղաքներու հաւատացեալները, որք ոչ նուազ ջերմեռանդ էին Սուրբ Տեղեաց, և կարողութեան տէր ալ էին, հարկաւ առատապէս մասնակցած են Երուսաղէմի պարտքերուն վճարման: Երբոր այսպէս յաջող պարագաներու ներքեւ կը սկսէր Երուսաղէմի համար հանգստակութեան գործը, յանկարծահաս աղէտ մը վերիվայր շրջեց ամէնուն բարենպաստ ջանքերը: Միեւնոյն 1718 տարին յուլիս 5'ի շաբաթ կէսգիշերին, յոյս Հոգեգալստեան հինգերորդ կիրակիին, տհագին հրդեհ մը, որ 34 ժամ տեւեց, Կ-Պոլսոյ մեծ մասը մոխրեաց* (ՄՐԳ.), *և մայրեկեղեցին և պատրիարքարանն ալ այրեցան, իրենց շրջականերով, ուր բազմաթիւ իշխանք Հայոց բնակէին,*

որով [illegible] (ՀՆՆ. 146), զի մայրաքաղաքը կը պարտաւորուէր նախապէս իւր աղէտը դարմանել։ Սակայն մեծամեծներուն գլխաւորները չյուսահատեցան, և գլխաւորապէս Սեդրեստրոս, Մելտոն, Սարգիս և Յարութիւն իշխանաւորներ, որոնք արդէն յիշուեցան։ Նախապէս մայրեկեղեցւոյն և յարակից պատրիարքարանին շինութեան հետեւեցան, որ 1719'ին սկսաւ, և 70 օրուան մէջ աւարտեցաւ (01 ՕՐԱ. 129), որուն [illegible]։ Նոր չէնքին պայծառութիւնը [illegible] (ՀՆՆ. 147), Շղթայակիրին նախագահութեամբ (01 ՕՐԱ. 129), որ եպիսկոպոսական աստիճան ունէր։ Այսպէս մայրաքաղաքին աղէտը դարմանելէն ետքը կրկին ոյժով սկսան Երուսաղէմի համար աշխատութիւնները, զորս առաջ ալ բարձի թողի ըրած չէին։ Ջանացին որ հետզհետէ պարտքերը վճարուին, գրաւի դրուած կալուածներ և ինչքեր և սուրբ անօթներ փրկանաւորուին, և միանգամայն մեծամեծ նորոգութեանց և ապագային ծախքերուն համար նոր գումարներ հայթայթուին։ Ուստի հանգանակութիւնները շարունակեցին, և հետզհետէ Երուսաղէմ փոխադրեցին, որ Հաննա վարդապետի ձեռօք կարգադրուին՝ Շղթայակիրին հրահանգներուն և Կոլոտի խորհուրդներուն համաձայն։ Այս է պատճառը որ Շղթայակիրին իւր աթոռն երթալը յապաղեցաւ մինչեւ 1721 (ՀՆՆ. 148)։

**1928.** Արեւելեան գաւառներու մէջ տեղի ունեցող շարժումներուն մասին խօսեցանք մինչեւ Օրիի մահը, 1711'ին (§ 1900), և

**ՆԵՂՈՒԹԵԱՆՑ ԴԷՄ ՃԻԳԵՐ**

ըսինք ալ թէ անոր գործին շարունակութեան կը հետեւէր Մինաս Տիգրանեան վարդապետը, և թէ երեք տարիէ ուշի Աստրախանի կողմերը դեգերեցաւ, Ռուսները Պարսիկներուն դէմ դրդելու աշխատեցաւ՝ Հայաստանի ապահովութիւնը պատրաստելու նպատակով (§ 1902)։ Պետրոս Ռուսաց կայսրը, ոչ գործը լքանել ուզելով և ոչ անմիջական ձեռնարկի դիւրութիւն ունենալով, խնդիրը կը ձգձգէր, և չէր ալ կրնար հեռանալ Մինասի առաջարկներուն, որոնք հաւանականութեան նշաններ իսկ չէին ներկայեր (ԼԷՕ. Բ. 285)։ Պետրոս երբոր 1715'ին Արտեմ Վոլինսկին Պարսկաստանի դեսպանութեան կը ղրկէր (§ 1902), Մինասի ալ յանձնարարեց, որ [illegible], և այս պաշտօնով Մինաս 1716 յուլիսին Աստուածատուր կաթողիկոսին ներկայացաւ Էջմիածին։ Եթէ Մինասի ներեալ էր իւր անհատական ձգտումներով յախուռն և վտանգաւոր ձեռնարկներէ չքաշուիլ, կաթողիկոսի մը ներեալ չէր նոյն յանդգնութեամբ գործել, և անկայուն ձեռնարկներով կացութիւնը վտանգել։ Թէպէտ Մինասը չվհատեցուց և բերանացի քաջալերներ ալ չզլացաւ, բայց գործունեայ շարժումի չհամակերպեցաւ, որ կրնար Պարսիկներու վրէժխնդրութիւնը դրգռել, առանց ապահովուած օժանդակութիւն տեսնելու. չքաշուեցաւ ալ պարզ նամակ մը գրել թէ [illegible] (ԼԷՕ. Բ. 286)։ Մինաս Էջմիածինէ Գանձասար անցաւ ներկայանալ Եսայի կաթողիկոսին, որ Օրիի հետեւած էր մինչեւ Աստրախան, անձամբ ձարին ներկայանալու համար (§ 1900)։ Եսայի լաւ ընդունելութիւն ըրաւ Մինասի, ինչ որ նախատեսելի էր. արքեպիսկոպոսութեան ալ բարձրացուց, և Պետրոսի ալ գրեց 1716 օգոստոս 10'ին, թէ [illegible] (ՍԶՆ. 316)։ Եսայիի և Աստուածատուրի տարբեր ընթացքին պատճառը, ոչ միայն երկուքին տարբեր տեսութիւններն էին, այլ և երկուքին մէջ յարաբերութեանց պաղութիւնը։ Աղեքսանդր կաթողիկոս Եսային պաշտպանած էր Աղուանից հակաթոռ կաթողիկոս Ներսէսի դէմ, այլ և յատուկ կոնդակով Շամախին ու Շիրվանը շրջականերով Եսայիի թեմ տուած էր. մինչ Աստուածատուր, թէպէտ Ներսէսի մերժումը պահած էր, բայց Եսայիի իրեն դէմ բռնած արհամարհական ձեւերէն ցաւած, նոր կոնդա-

կով մը Շամախին ու Շիրվանն ու Շաքին փէշքէշ հաչակելով հանած էր Աղուանից աթոռին իրաւասութենէն (ՋԱՄ. 83)։ Մինչ 1716ին այդ կացութիւնը կը տիրէր, Մինաս Հայաստանէ դառնալուն զանազան նեղութեանց, մինչեւ իսկ բանտարկութեան հանդիպեցաւ, և հազիւ 1717 մարտ 14ին զինքը կը գտնենք Մոսկուա, ուր իր ուղեւորութեան մասին տեղեկութիւններ կը հաղորդէ Պետրոս կայսեր։ Վոլինսկին ալ կը դառնար նոյն տեսեն, բայց չենք գիտեր ինչու. թէ Մինասի և թէ ընդհանրապէս Հայերու և Արեւելցի քրիստոնեաներու մասին նպաստաւոր չէին անոր տեսութիւնները, երբ Պարսից տէրութիւնը անկեալ և գրեթէ ոչնչացեալ կը ցուցնէր, և կը հաղորդէր Վրացիներուն շարժումի պատրաստ ըլլալը։ Ինչ ալ ըլլան իւրաքանչիւրին գիտումները, ստոյգ է որ բոլոր այդ տեղեկութիւնները նպաստել ունէին Պետրոսը գրգռել Պարսից դէմ ելլելու և քրիստոնէից ազատութիւնը իրագործելու։

**ԱՂՈՒԱՆԻՑ ԳՈՐԾԵՐԸ**

**1929**. Պարագաները կարծես թէ իրար կը մղէին։ Մինչ 1717ին էր որ Աֆղաններու շարժումը բուռն յարձակողական ձեւ կ'առնէր, և Միր-Վէյս որդւոյն Միր-Մահմուտի հետ, ժամանակից իշխաններն ալ համախմբած, Պարսից վրայ կը քալէր, մինչ շահ Հիւսէյինի մեղկացած և տխմար կառավարութիւնը, իզուր կը ջանար արշաւանքը առջեւն առնուլ։ Թէպէտ և մասնաւոր յաջողութիւններ կ'ունենար, այլ խառնակութիւն երկու ազգերու միջոցը հետզհետէ կ'ընդարձակուէր։ Երբ Ափղաններու մէկ ճիւղը՝ այսինքն Աֆղանիստանի և Պելուճիստանի բնակիչները՝ Արեւելքէն կու գային Շիի Պարսիկներու դէմ, հարաւէն ալ Քուրդեր, և հիւսիսէն Լէզգիներ 1718ին կ'արշաւէին Պարսկական գաւառները, և կ'աղաղէին Սալմաստն ու Համատան, ու բովանդակ Ատրպատականը, և կը դիմէին դէպի Ասպահան։ Տագնապալից կը դառնար Հայերուն կացութիւնն ալ Էջմիածինի և Աղուանից կաթողիկոսական վիճակներուն մէջ հաւասարապէս։ Եսայի, որ շարժումի դաշնակցներով վառուած էր, ինքն ալ զգաց որ արկածախնդիր կերպեր կրնան վտանգաւոր ըլլալ, ուստի մէկ կողմէն յատուկ պատուիրակով Մինասին կը յանձնարարէր Դժ չփոխշառորութեան (ԼԷԹ. Բ. 293), և միւս կողմէն 1719ին անձամբ Էջմիածին գալով և խոստովանելով զյանցանս իւր՝ Աստուածատուրի հետ կը հաշտուէր, և նորէն Շիրուանի նահանգին իրաւասութեան և իրաւունքներուն համար կաթողիկոսական կոնդակ կ'ընդունէր Աստուածատուրէ։ Բայց այս անգամ Շիրուանցիները կը դժկամակէին յայտարարելով, թէ Դու Էջմիածնի ես վէհն, Գանձասարայ ու ամենայն Աղուանից (ՋԱՄ. 84)։ Եսայի 1720ին կրկին Էջմիածին կը դառնայ այդ դժուարութիւնը վերցնելու, և Աստուածատուր երկրորդ կոնդակով առաջին որոշումը կը հաստատէ, և ժողովուրդին միտքը բանալու համար կը հաւաստէ, թէ Եսայի վերադարձաւ առ Դեզ ի հնազանդութիւն, վասն որոյ և Դու վերադարձուցես զնորին հայրենի աթոռ Դու։ Մանաւանդ թէ նկատի առնելով Գանձասարի աթոռին կարօտութիւնը, և ուզելով զայն զօրացնել Խաչէնի հակառակաթոռ Ներսէսի դէմ, Կենջայու այսինքն Գանձակի վիճակն ալ Եսայիի կը թողուր, և Նախիջեւանի, Ագուլիսի, Ղափանի և Տփղիսի վիճակներուն վրայ ալ ժողովարարութեան կոնդակ կու տար (ՋԱՄ. 84)։ Սակայն այս միջոցները բաւական չէին կացութիւնը բարւոքել։ Աղուանք ոտնակոխ եղած էին Լէզգիներու անգութ արշաւանքին և անօրէն յափշտակութեանց ներքեւ։ Խաչէն աւերակ կը դառնար, Եսայի Գանձասարը կը թողուր և լեռ կը փախչէր, Գանձակ ոտնակոխ կ'ըլլար, որչափ ալ Վախթանգ Վրաց իշխանը իր մասին, և Արցախի իշխաններ իրենց կողմերուն պաշտպանութեան միջոցներու ալ կը դիմէին։ Ասոնք գիրի մը մէջ կը պատմեն, թէ անձար Չուրիւ յետ պատուոյ մեծաց, 10 և 12 հոգւոյ մարդ ձախեցան, պատերազմ մտան, և երբ հրամանատարներ կը յիշուին Եսայի կաթողիկոսը, Շիրուան Պարթայեան կամ Պարտաւեցին, Սարգիս Ջարաբերդեան կամ Ջլաբերդցին, և Յովհաննէս Գանձակեան կամ Գանձակեցին (ԵԶՆ. 341)։ Սակայն իրական արդիւնք մը յառաջ չգար, և երկրին աւերումը չդադարիր, զի զանազան կողմերէ Պարսիկներուն վրայ

յարձակողներ, թէեւ իրարու ոյժ կու տային իրենց համամիտ ուղղութեամբ, բայց իւրաքանչիւր ճիւղ առանձին փառմձին կը գործէր։

**ԱՖՂԱՆՆԵՐՈՒ ՋՕՐԱՆԱԼԸ**

**1930.** Զօրաւորագոյն կողմը Աֆղաններն էին։ Երբ Միր-Վէյս իշխաննին մեռաւ, Միր-Ապտուլլահ եղբօրը կ'իյնար իշխանութիւնը, սակայն Միր-Մահմուտ հօրեղբայրը սպաննելով իր յաջորդութիւնը ապահովեց, և խոյն իբեններրը նոր պատերազմի քալցուց, և Կրրման նահանգը գրաւեց 1721'ին։ Շիտակ Սպահանի վրայ քալեց, և Կուլնապատի դաշտը բանակեցաւ, իսկ Հիւսէյին թագաւոր Ասպահանի միջնաբերդը ապաւինեցաւ։ Այդ եղելութեան ամսաթիւ, կը ցուցուի Սուրբ Խաչն անցեալ մեծ շաբաթն (ՏՑՈ. Ա. 226), զոր Խաչի երկրորդ չաբաթ օրուան վրայ մեկնելով կը գնենք 1721 սեպտեմբեր 30'ին։ Հայաբնակ Նոր-Ջուղան Ասպահանի պարսպապատ և ամրացած քաղաքէն դուրս կը մնար, և առաջին անգամ Աֆղաններէն տանակոխ ըլլալու սահմանուած էր։ Ջուղայեցիք կառավարութեան դիմեցին, որ զիրենք ալ Ասպահանի մէջ ընդունի, բայց մերժուեցան, զի պաշարեալ քաղաքին մէջ աւելորդ բերան աւելցնել կ'ըլլար, մանաւանդ որ նախարարներ մտածեցին, թէ Աֆղաններ տաճիկ են և ուժ անուժ և վայրենի, որ աւելի աւարի հետամուտ են, և կրնան ընչաւորութեանն Ջուղայեցւոց կողոպտելով յագենալ և ետ դառնալ (ՉԱՄ. Գ. 780)։ Այն օրերը մղուած Ֆահրապատի ճակատամարտը ձախող եղաւ Պարսիկներուն, և Մահմուտ սկսաւ Ջուղայեցւոց սպառնալ։ Ջուղայի Պարսիկ կառավարիչն ալ փախաւ, և Հայեր յատուկ պատգամաւորութեամբ Մահմուտի գթութեան դիմեցին առատ ընծաներով, և պատգամաւորութեան գլուխ էր Մարգար Բաղտասարեան Լըվորենց, հմուտ քաղաքական և մինչեւ Հնդկաստան ուղեւորած վաճառական։ Մահմուտ հաճեցաւ 70,000 թումանի հարկի վճարման պայմանով, որուն կամայ ակամայ հնթարկուեցան Ջուղայեցիք (ՏՑՈ. Ա. 234)։ Ոմանք պատգամաւորութեան բանտարկուելուն և 40 աղջիկ ալ տալուն պարագաները կ'աւելցնեն (ՉԱՄ. Գ. 781-782), սակայն սկզբնական պատմագիրներ այսպիսի պայմաններ չեն յիշեր։ Ջուղայեցիք թէպէտ ծանր բեռան ներքեւ մտած, բայց գոնէ ազատ մնացին այն սաստիկ սովէն որ Ասպահանի մէջ տիրեց, և 20,000 անձինք սովամահ մեռան, և Շահ Հիւսէյին ալ վերջին նեղութեան մէջ ստիպուեցաւ անձնատուր ըլլալ, և իր ձեռքով արքունական նշանները իր գլուխէն հանելով Մահմուտին գլուխը դնել (ՏՑՈ. Ա. 232)։ Ասպահանի առումը նշանակուած է ժամանակակից Ստեփանոսէ յաւուր Պենտեկոստէի կիւրակէն (ՏՑՈ. Ա. 234), որ կը համդիպի 1722 մայիս 13'ին, և այդ ամսաթիւը կը նախադասենք օտարազգիներէ նշանակուած հոկտեմբեր 12 ամսաթիւին, որոնք 600,000 անձանց կոտորած ալ կը յիշեն (ՏՑՈ. Ա. 235)։ Ստոյգ է որ քանի մը ուրբաթներ մասնաւոր փոճկողէն ընել տուած է Մահմուտ Պարսիկներու վրայ, բայց ընդհանուր ջարդ եղած չէ։ Իսկ Ջուղայեցիք թէպէտ կոտորածէ զերծ մնացին, սակայն Աֆղաններուն հարստահարութիւններէն չազատեցան, որոնք չարունակ ուրան, ղերակօսր, ղինէ և ղղէ և ղոյլ ճողոմ էինչ պահանջէին։ Պարսիկներուն թշնամութիւնն ալ գրգռուած էր վրանին, իբր թէ Հայք համախոհք ընդ Աֆղանաց լինելով հալածեսցեն զնոսա երկրէն Պարսից, և նոյն իսկ Լըվորեանցի ձեռօք պայմանաւորեալ տուգանքին վճարումն ալ նորանոր նեղութեանց առիթ ընծայեց, և հրէայքն անմեղացն Հայոց նահատակութեան պատճառ եղաւ (ՏՑՈ. Ա. 240)։ Ցիշեալ հինգերը Ջուղայի գլխաւորներէն էին, և կը կոչուէին Գալստան որդի Խաչիկի երեւանեան, Մանուկ որդի խոճա Մելքումի՝ որ 9 ամիս ալ չարչարանք կրեց, Սարհատ Խալդարեան որդի Գրիգորի՝ որ նոյնպէս առաջ է յեղեն դահճէ լուր-լուրէ, Փանոս կրտսեր որդի Խօջամալի, և Յարութիւն որդի բժիշկ Մինասի։ Հինգին ալ գերեզմանները կը տեսնուէին Ջուղայի եկեղեցիներուն մէջ (ՏՑՈ. Ա. 229—231), և թուականը ամէնուն ալ 1722 տարին է, իսկ ամսաթիւերը Ջուղայեցւոց տոմարով ցուցուած են. Փանոս՝ նախա 1'ին = յունիս 19'ին, Յարութիւն՝ նախա 24'ին = յուլիս 12'ին, Մանուկ և Սարհատ դամա 18'ին = հոկտեմբեր 17'ին, իսկ Գալստանին ամսա-

թիւը յիշուած չէ։ Ասոնց տապանագիրները վրայ իբրեւ Նահատակ յիշատակուիլը կը ցուցնէ, թէ կրօնափոխութեան պայման ալ առաջարկուած է կեանքերնին ազատելու համար։

**1913**. *Մահմուտի յաղթութեամբ և Պարսից Թագաւոր հռչակուելովը խաղաղութիւն չհաստատուեցաւ։ Թահմասպ կամ Թահմազ, Հիւսէյինի որդին, հօրը գերութիւնն ու հրաժարիլը լսելուն, զինքն Թագաւոր հռչակեց Մազանդարանի մէջ՝ ուր կը գտնուէր. և Ատրպատականն անցաւ, Թավրէզի մէջ կեդրոնանալով Մահմուտի վրայ քալելու համար։ Այն տեղ՝ անգամ մըն ալ Պարսիկներ Հայերու դէմ գրգռուելով Թահմազը համոզած էին Հայերը կոտորել, իբրեւ Աֆղաններու օգնողներ, եթէ իւր մերձիմն եղող Յովհաննէս ճամաչալ կամ ժամագործ, Թահմազին դիմելով կոտորածին առջեւը չառնէր։ Միայն թէ Թահմազ որբեցուցանէան տուեալ էր զանձն, և լուրջ ձեռնարկ մը չկրցաւ կարգադրել։ Ինքն ստեւանդ կը դեգերէր աւելի իրեններուն ծանրանալով, ինչպէս Ատապատի մէջ հայազգի իշխանաւոր Աստուածատուրին, և Նախիջեւանի մէջ Հայոց կաթողիկոս Աստուածատուրին վրայ (ՋԱՄ. Գ. 782), իսկ երկիրը անտէրունջ խռովութեանց մատնուած էր։ Պատեհը չատ յաջող երեւցաւ Օսմանցոց՝ Պարսիկներուն վրայ զօրանալու և անոնցմէ մաս մը գաւառներ գրաւելու։ Շիրվանի Սիւննի մահմետականներն ալ Լեզգիներուն արշաւանքներէն նեղուած (§ 1929), Շիի Պարսիկներուն անհամակիր, Օսմանցոց դիմեր և զանոնք հրաւիրեր էին։ Սուլտան Ահմէտ Գ'ի հրամանով և եպարքոս Տամատ Իպրահիմ փաշայի նախաձեռնութեամբ, Տավուժ խան այն կողմերու զօրավար և կուսակալ նշանակուեցաւ, և Պարսից տէրութեան յապաւումները սկսան (ԺՈՒ. 330)։ Երբ Սիւննի մահմետականներ Օսմանցոց կը դիմէին, Հայեր ալ Ռուսներուն դիմելու սկսած էին։ Ասպահանի Աֆղաններէ գրաւուելէն քիչ ետքը, 1722 դեկտեմբեր 20'ին, Մինաս Փէրվազեան, Հաղբատու առաջնորդ և Վրաստանի արքեպիսկոպոս, ընդարձակ գրութեամբ մը Մինաս Տիգրանեան արքեպիսկոպոսին կը դիմէր, որ Պետրոս ձարը համոզէ Հայաստան արշաւել։ Շտապով և փութով զՇա– քաղաքն Շամախի հասուր, կը գրէր, մինչ նորա անուանն լինի, և որին տեղն հանի, հարկաւոր հաղաք Հայ ազգ զինուորք առ սոսա նորա կայ ժամ։ Կը յաւելուր ևս, որ եթէ մինչ ի մարդ մեկն էլէք ու, ղեր ազգն բնաջինջ կ՚անեն, Խզլբաշն կա զօրանայ, ղեղ ազգն կա կղոցնէ, և անհրաժեշտ կը նկատէր որ Երևան չէոք թեբէմք։ Արցախեցոց Նախապատրաստութեանց և ձեռնարկութեանց ալ ակնարկելով յոյս կու տար, և կ'ըսէր, Ղարադաղըն և Խափանու յերկերն մեծանէալ Հայքն քաջութեամբ կը կռուին, թայց ֆլորի և տեր չունին, Աստուած տալչնորհէ որ Մոֆաորն Շամախի հանի (ԵԶՆ. 337)։ Տիգրանեան անհետեւանք չթողուց Փէրվազեանի նամակը, ինչպէս իւր գրութիւնները կը վկայեն, և ահա Եսայի կաթողիկոսն ալ 1723'ին սկիզբները ուղղակի Պետրոսի կը գրէր, որ փութայ գալ իւր բանակով, և մինչեւ որ ինքն հասնի, այն ժողով մարդկանց, զորս յիշեցինք (§ 1929), յաղագս յաղագս խաղաղ գրեալ և կնքեալ չնորհէ, որով կ'ըսէ, մեք ի զօրութենէ քամմն աանամք զօրութեան, կամեմք զրահ և մինամարտեմք թշնամեաց (ԵԶՆ. 341)։ Խաչէնի հակաթոռ Ներսէսն ալ նմանօրինակ գիր կը գրէր 1723 մարտի առաջին օրը (ԵԶՆ. 344)։ Պետրոս ձար արդէն հանդարտած էր ուրիչ պատերազմներէն, առիթը յարմար էր, հրաւէրներն ալ նպաստաւոր էին, պէտք չէր ալ սպարէզը Օսմանցոց թողուլ. ուստի 1723 մայիս 3'ին, Հայոց բարեկամական յայտարարութիւն մը ուղղելով (ԵԶՆ. 353), Ռուս բանակովը կը յառաջանար, հետզհետէ կը գրաւէր Թէրէք և Տէրպէնտ և Բաքու. բայց իրեն ետ դառնալէն ետքը Ռուսներ չը տարածուեցան դէպի Կիլան և Մազանդարան։ Այսպէսով Պարսկաստանի ներքին խռովութեանց վրայ արտաքին արշաւանքներն ալ աւելցան, մինչ ինքզինքնին Պարսից շահ անուանողներ, Մահմուտ և Թահմազ, աւելի իրարու՝ քան թէ օտարին դէմ կռուելու կը նայէին։*

ՀԱՅԵՐՈՒՆ ԻՂՁԵՐԸ

**1932**. *Երկու տէրութեանց միանգամայն Պարսկաստանի վրայ յարձակիլը, երկուքին մէջ մրցումի և թշնամութեան վտանգ կը*

սպառնար, սակայն գործը դիւանագիտական բանակցութեանց ենթարկուեցաւ, և

**ՕՍՄԱՆՑԻՆԵՐ ԵՒ ՌՈՒՍԵՐ**

Տամատ Իպրահիմ եպարքոս ու Նէբլույէֆ ռուսական դեսպան կրցան համաձայնութեան հասնիլ, Գաղղիական դեսպան Պօննաք մարքիզին (Jean-Louis d'Usson, marquis de Bonnac) միջամտութեամբ։ Որոշուեցաւ որ երկու տէրութիւններ որոշեալ չափով և սահմանով գաւառներ իւրացնեն, և Թահմազի ալ՝ իբր օրինաւոր ժառանգի թագաւորութեան սահման մը թողուի, պայմանով որ մնացածէն հրաժարի, իսկ եթէ դժկամակի այդ պայմանը ընդունիլ, պայմանին հաւանող իշխան մը՝ թագաւոր անուանուի։ Այդ պայմանագիրը կնքուեցաւ 1724 յունիս 13/24ին, և Պետրոս ձար զայն վաւերացուց 1725 յունուարին, և Կ-Պոլիս բերուեցաւ յատուկ պատգամաւորի միջոցաւ (ԺՈՒ· 330)։ Սակայն 1725 յունուար 17/28'ին Պետրոս կը մեռնէր 53 տարեկան, չարաչար աշխատանքներու և անողոք հիւանդութեանց երեսէն, և կայսրութեան կը յաջորդէր Կատարինէ Ա. իւր այրին (ՇՕԲ· 243), որ պայմանագիրը կը հաստատէր։ Այդ դաշնագրով Տէրպէնտ, Բագու, Կիլան, Մազանդարան և Աստարապատ Ռուսիոյ, իսկ Երեւան և Թաւրիզ իրենց նահանգներով կը մնային Օսմանցոց (ՇՕԲ· 289), որոնք իրենց թողուած մասերուն տիրապետութեանը հետեւելով, Երեւան քաղաքը գրաւած էին 1714'ին, և հետզհետէ գրաւեցին Ղարապաղ, Մարաղա, Ուրմիա, Մուղան, և վերջապէս 1725 յուլիս 21'ին Թավրէզ ալ իրենց անձնատուր կ'ըլլար (ԺՈՒ· 331)։ Իրաւ խնդրոյն լուծում կը տրուէր, բայց ոչ Հայոց բաղձացած և դիտած կերպով. անոնք քրիստոնեայ տիրապետի իշխանութեան ներքեւ մտնել կ'ուզէին, մինչ այժմ մէկ մահմետականէն միւս մահմետականին իշխանութեան ներքեւ կ'անցնէին, զի Արցախ և Երեւան և Ատրպատական, որ աւելի հայաշատ նահանգներն էին, Օսմանեան տիրապետութեան կը տրուէին։ Այդ միտքով մելիքներէն ինը գլխաւորներ 1724 հոկտեմբեր 18'ին, տակաւին դաշնագիրը չվաւերացուած, Պետրոսի կը դիմեն, թէ Ռուսաստանի զօրքն են էսոր Թարվէր, Նախիջևան, Երևան, Թիֆլիս, Գորգոլո, Ղազախ, ուստի կ'աղաչեն որ վասն Քրիստոսի սիրոյն, և սուրբ Խաչի խաչելոյն մեզ օգնութեան հասանիս, և զմեզ ի խնամոց ներքեւ պահես (ՍՁՆ· 381)։ Սակայն Պետրոս նոյեմբեր 10'ին դաշնագիրը վաւերացնելուն առթիւ պատասխան կու տայ, որ եթէ Օսմանցոց իշխանութեան ներքեւ չեն ուզեր մնալ, Ռուսական բաժին գաղթեն, և Կիլան, Մազանդարան, Բագու, և այլ ինչ տեղ որ իրենց ընդունելի լինի, իրենց բնակութեան տեղ պիտի տրուի (ՍՁՆ· 393), և բառ այսմ ալ կը հրամայէր այն կողմերու կուսակալին նոյն նոյեմբեր 10'ի պաշտօնագիրով (ՍՁՆ· 395)։ Արեւելեան գաւառներու մէջ և էջմիածինի չուրջը կատարուած եղելութիւնները, մեզ հասուցին մինչեւ 1725 տարին, որ Աստուածատուր կաթողիկոսի մահուան թուականն է, և այս շրջանը չփակած, պէտք է որ վերջին տարիներուն մէջ ուրիշ կողմեր կատարուած գործերն ու դիպուածները քաղենք, պատմական ժամանակագրութիւնը պահելու համար։

1933. Յորչափ Գրիգոր Շղթայակիր Կ-Պոլիս կը մնար, Յովհաննէս Կոլոտի գործունէութիւնն ալ գլխաւորապէս Երուսաղէմի

**ՇՂԹԱՅԱԿԻՐ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ**

պարտքերուն և պէտքերուն չուրջը կը դառնար (§ 1927)։ Արդէն գրեցինք, թէ Կ-Պոլսոյ և գաւառներու մէջ բացուած հանգանակութիւնները այնչափ ինչ արտադրած էին, որ թէ պարտքերը վճարելու կը բաւէին, և թէ նորոգութիւններ ընելու ու նոր կալուածներ գնելու կը նպաստէին, ուստի այլեւս Շղթայակիրին Կ-Պոլիս մնալը անհրաժեշտ չէր, և պէտք էր որ աթոռին ներքին և արտաքին բարեկարգութեան ձեռնարկէր տեղւոյն վրայ աշխատելով։ Շղթայակիրին Կ-Պոլսէ մեկնելուն ամսաթիւը ճշդուած չէ, բայց մերձաւորաբար պէտք է դնել 1720 ամառուան մէջ, զի յանկարծ կը տեսնենք զայն Բերիա հասած, ուր հոգետունը կէլն չերղողորդեալ և բազում մարդիկ եւս վասն սուրբոյն Սաղիմայ։ Իսկ 1721 փետրուար 12'ին Երուսաղէմ կը մտնէ, մեծաւ փառօք և շքեղութեամբ, իրեն հետ ունենալով բազում թե-

*բռնակալն [illegible]* (ՀՆՆ. 148)։ *Հնար չէ ըսել որ Կ-Պոլիսէ Բերիա անցորդ և ապարդիւն անցած ըլլայ Շղթայակիրը՝ սուրհանդակի ոճով, և պէտք է ընդունիլ թէ հետզհետէ ճանապարհին վրայ եղող քաղաքները հանդիպելով, նպաստներ արդիւնաւորած է յօգուտ Երուսաղէմի։ Գրիգոր Շղթայակիրի իւր աթոռը հասնելէն ետքը առաջին հինգ տարիներու մէջ ցուցած գործունէութիւնը կրնանք նկատել իբր Երուսաղէմի կատարեալ վերականգնութիւն, որուն մանրամասնութիւնները մեր պատմութեան շրջանէն դուրս կը մնան։ Նա բոլոր պարտքերը վճարելով, [illegible], և այս կերպով բոլոր [illegible] ապատութիւնը կը հոգար, ոչ միայն չարժական կարասիները և սուրբ սպասները, այլ և անշարժ կալուածներ ալ, ինչպէս [illegible] (ՀՆՆ. 151)։ Այդ բոլոր գործողութեանց մէջ Շղթայակիրին օգնականներուն կարգին առաջին տեղը կը գրաւէ Յովհաննէս Երուսաղիմացի կամ Հաննա վարդապետ փոխանորդը. բայց յիշատակութեան արժանի են նաև Դաւիթ Սպարկերտցի լուսարար և Յակոբ Ուռհայեցի վերակացու վարդապետները* (ԱՍՏ. Բ. 7)։ *Նշանաւոր նորոգութիւններ ալ կատարուեցան Ս. Յակոբայ մայրավանքին տաճարին մէջ՝ զորս մանրամասնօրէն կը յիշէ Հաննա* (ՀՆՆ. 153), *և վերջապէս 1725՚ին կ՚աւարտին Յոպպէի վանքին ու եկեղեցւոյն շինութիւնները, որպիսիներ Շղթայակիրին ամբողջ կեանքին մէջ շարունակեցին։ Իսկ ներքին բարեկարգութեանց մասին բաւական ըլլայ յիշատակել Շղթայակիրի յատուկ ջանքերը [illegible]* (ՀՆՆ. 151)։

**1934.** *Մինչև 1725 համեռ հնգամեայն մէջ Յովհաննէս Կոլոտ պատրիարքին գործունէութեան ալ մէկ մասը նորէն Երուսաղէմի նուիրուած էր, շարունակելով անոր օգտին բացուած հանգանակութիւնները, և մանաւանդ քաջալերելով կարող և բարեպաշտ դասակարգին ուխտագնացութիւնը։ Կոլոտի այդ մասին ստացած յաջողութեան կարգին պիտի յիշենք Երուսաղէմի Ս. Յարութիւն տաճարին նորոգութեանց համար պետական արտօնութիւնը։ Առաջին քայլը Գաղղիական Պօննաք դեսպանն էր առած, արտօնութիւնը ստանալով Լատինացւոց մասին համար* (ԺՈԻ. 329), *որուն հետեւեցան Յոյներ և* *եւ հրաման յարքունուստ [illegible] երկոցունեցն, այսինքն Յունաց և Լատինացւոց*, *իսկ Հայոց մասին համար բան մը բռնուած չէր։ Կոլոտ յաջողեցաւ յատուկ հրամանագիր ստանալ, որով կարենար կատարել նորո[illegible]* (ՀՆՆ. 146), *և գործին ձեռնարկեց Հաննա՝ դեռ Շղթայակիրը չհասած։ Կոլոտ մայրաքաղաքի եկեղեցիներուն վրայ ալ յատուկ մտադրութիւն դարձուց, և հրկիզեալ մայրեկեղեցւոյն շինութենէն ետքը* (§ 1927), *ձեռք զարկաւ Սամաթիոյ Ս. Գէորգ, և Օրթաքէօյի Ս. Աստուածածին եկեղեցիներուն։ Բայց Կ-Պոլսոյ պատրիարք եղողին ժառանգական աշխատութիւնը՝ կաթոլիկական կուսակցութեան խնդիրն էր, որ դայթակղութիւն եղած էր և էր և պիտի ըլլար տակաւին Հայութեան ծոցը։ Կոլոտ ոչ բաւն ընդդիմացող մըն էր Եփրեմի և Աւետիքի տեսակէն, և ոչ անձնական շահու տեսակէտէն գիջանող մը Պալուաթի և Մարտիրոսի նման։ Նա կ՚ընդունէր թէ յաւ բաներ կը գտնուին օտար եկեղեցեաց մօտ, մանաւանդ բարեկարգութեան և կարգապահութեան տեսակէտէն, զորս ուրացնել չէր ուզեր* (ԿՈԼ. 58)։ *Բայց այս պատճառով չէր գիջաներ երբեք հայադաւանութեան սկզբունքէն շեղիլ, և իւր եկեղեցին օտարին հպատակեցնել, և կը յուսար որ քաղցր կերպեր և համոզիչ միջոցներ պիտի կարենան համաձայնութիւն գոյացնել։ Ուստի սկսաւ կաթոլիկական կուսակցութեան գլխաւորները իրեն մօտ հրաւիրել, անոնց ցուցնել իրենց օտարասիրութեան վտանգները, պետական շրջանակներուն կասկածները, յառաջ եկած և տակաւին հաւանական երևցող հետեւանքները, որոնք ամէնքը հետեւանք էին իրենց ազգային ուղղափառ եկեղեցին անարգելուն, և օտարազաւան եկեղեցիներ յաճախելուն։ Իբրև առաջին գործնական*

*քայլ կ'առաջարկէր, [illegible] Հայոց։ Ատհական պատրիարքին խմասսուն խորհուրդները իրենց արդիւնքն ունեցան, զի հռոմէականներ ալ կը պատմեն թէ [illegible], ինչ որ խափանած կ'ըլլար դժպհի պատահարները։ Սակայն կաթոլիկացեալներուն իսկապէս թշնամիները, զորս [illegible] կը կոչէ հռոմէական պատմագիրը, այսինքն են Լատին եպիսկոպոսը, Լատին աբեղաներ, Լատինաց մօտ կրթուած Հայազգիներ, և Լատինէ չահուած եկեղեցականներ չէին համակերպիր, և ազգայիններ [illegible]* (ՉԱՄ. Գ. 776)։ *Կ'արժէ անգամ մըն ալ դիտել տալ, թէ որո՞նք էին թշնամութեանց և հակառակութեանց և հալածմանց բուն սկզբնապատճառները։ Կոլոտ իւր խոհականութեամբ տակաւին [illegible] անհամաձայնութեանց, որոնք նոյնիսկ կաթոլիկամիտ կուսակցութեան ծոցը կը յուզուէին։ Երբ իւր խոհականութիւնը ակարութիւն կարծուելով, իրեն դէմ կը գրգռուէր նախանձայոյզ կողմը, նա նորէն կը յորդորէր սպասել [illegible]։ Յատուկ պատուիրակ մըն ալ կը յղէր Լատին եպիսկոպոսին որ զսպէ իրեններուն կրօնամոլ ընթացքը, բայց այդ միջոցն ալ անօգուտ կը դառնար* (ՉԱՄ. Գ. 776)։

**1935.** *Սակայն երկայնամտութիւնն ալ իրեն չափն ունի, և Կոլոտ ալ ստիպուեցաւ յայտարարել, թէ [illegible]։ Երբ տեսաւ*

**ԿՈԼՈՏԻ ԳՈՐԾԵՐԸ**

*որ իւր խոհականութիւնը գայթակղութեան առիթ պիտի ըլլար, և ինքն ալ պարտաւոր պիտի սեպուէր կառավարութեան աչքին, երբ օտարներու ձեռնտու և օտարասիրութեան հովանաւոր. երբ տեսաւ, կ'ըսենք, որ օտարամիտներէն [illegible], և իրենները խմբովին [illegible], հարկադրուեցաւ պէտք եղած բացատրութիւնը տալ կառավարութեան, թէ կաթոլիկութեան հետամուտ եղողներ ունին [illegible]։ Այդ հիման կառավարութիւնը հրամայեց այդ կուսակցութիւնը զսպել և ջնջել, գլխաւորները ստիպել և պատժել, մինչև իսկ ոստիկանական հսկողութիւն հրամայեց Լատին եկեղեցիներուն դուռները, հոն մտնողները քննելու, և գաւառներն ալ շրջաբերականով հրաման տուաւ կուսակալներուն՝ միևնոյն զգուշաւորութիւնը ձեռք առնելու* (ՉԱՄ. Գ. 776)։ *Այդ եղելութեանց թուական կը ցուցուի* 1720 *տարին, որ է ըսել Շղթայակիրին Կ-Պոլսէ մեկնելու միջոցին, երբ ազգը Երուսաղէմի տագնապալից խնդիրէն չունչ առնելով, կրցաւ իւր ներքին գործերուն մտադրութիւն դարձնել։ Ժամանակակից յիշատակներ Կ-Պոլսոյ մէջէն հալածուածներու կամ բանտարկուածներու կամ պատժուածներու անուններ յառաջ չեն բերեր, և մեր կարծիքով ասիկայ կը ցուցնէ թէ Կոլոտ խստութեամբ չմղեց պետական հրամաններուն գործադրութիւնը մայրաքաղաքին մէջ, և այդ պարագային ալ գործնական կերպով փայլեցուց իւր ամոքիչ և խոհական ընթացքը։ Հռոմէականք քանի մը եկեղեցականներու անուններ յառաջ կը բերեն, իբր այդ առթիւ բանտարկուած* (ՉԱՄ. Գ. 777), *բայց ամէնքն ալ գաւառներու կը պատկանին, և անոնց մէջ ալ տանջուածի կամ պատժապարտի յիշատակ չկայ, և բոլորն ալ աւելի կամ նուազ տուգանքով ազատուած են։ Վեց նշանաւոր Բերիացիք իբր թիապարտ Կ-Պոլիս բերուելով, 4 օրէն տուգանքով մը թողուած են։ Քանիվեց Կարնեցիք* 2000 *դահեկանով, և իբր հարիւր Կարնեցիք ալ* 2500 *դահեկանով ազատած կ'ըսուին։ Երեք Կարնեցի քահանաներու վրայ աւելի խստութիւն ցուցուեր է, բայց վերջապէս անոնք ալ դրամով թողուեր են։ Երկու հարիւր ինսունութվեց Բասենցիներու ներողութիւն տրուեր է, մինչև որ* 1200 *դահեկան վճարեն։ Երկու Եւդոկիացի քահանաներու համար* 1500 *դահեկան վճարել հարկ եղեր է։ Նմանօրինակ եղելութիւններ կրկնուեր են Անկիւրիա, Ամիդ, Երզնկա, Բաբերդ և ուրիշ քաղաքներ, որոնք կը ցուցնեն թէ եպարքոսական հրամանը առիթ ընծայեր է կուսակալներուն քիչ մը դրամ չորթելու, որովհետև տուգանքի ենթարկուողներուն մէջ, ինչպէս ի Կարին, կաթոլիկութեան*

միտեալ չեղողներ ալ եղեր են։ Պահ մը ձերբակալութիւններ և տուգանքներ թուլցեր են, երբ կաթոլիկութեան միտեալներուն գլխաւորներ, այլեւս լատինական թելադրութիւններուն չանսալու և օտարներու չհպատակելու համար կառավարութեան առջեւ յանձնառու եղեր են։ Բայց Լատին եկեղեցականներուն սադրանքները նորէն միտքերը կը պղտորեն, և պատրիարքարանի դէմ գրգռուելու առիթներ կը ստեղծեն, որով 1723'ին սկիզբները նորէն մասնաւոր խռովութիւններ տեղի կ'ունենան (ՉԱՄ. Գ. 779)։ Ինչ ալ ըլլայ յառաջ բերուած պարագաներուն իսկութիւնը, յայտնի կերպով կը տեսնուին, մէկ կողմէն Կոլոտ պատրիարքին խոհական չափաւորութիւնը, և միւս կողմէն Լատին և լատինամիտ եկեղեցականներուն մոլեռանդ ջանքը, և նոյն իսկ իրենց հետեւողներուն վնասելու չափ առաջ նետուիլը։

**1936.** Մխիթար Սեբաստացի վարդապետը, արդէն հռոմէականութեան հպատակած և աբբահայր կոչուած, Մեթոնի մէջ կը գտնուէր հոծեմատաբար խաղաղիկ վանականութեան մը գլուխը (§ 1893), որ տակաւին ուսումնականութեան հետեւող մարմին մը չէր կրնար ըսուիլ, քանի որ այդ նպատակին չէին նպաստեր ոչ Պեղոպոնէսի միջավայրը, և ոչ ալ իր հետեւողներուն յառաջացեալ տարիքը (Մխի. 250)։ Բայց այդ պիտի չըլլար Մխիթարի վերջնական դադարը, և անգամ մը դէպի Արեւմուտք քայլերը ուղղած, պիտի մղուէր մինչեւ անոնց կեդրոնը։ Օսմանեան բանակին արշաւանքին առաջին շունչը շարժման մէջ դրաւ Մխիթարը, որ Օսմանեան երկրէն փախստական՝ չէր կրնար Օսմանցոց պաշտպանութեան վստահիլ։ Առաջին գործն եղաւ իրեն հետ եղող ինը դպիրները քահանայ օծել տալ Լատին եպիսկոպոսի ձեռնադրութեամբ 1714 դեկտեմբերին (Մխի. 256), և ետքէն Վենետկեան կուսակալին հետ բանակցիլ Վենետիկ փոխադրուելու միջոցներուն վրայ։ Իրեններէն վեցը՝ Ղազար Ակնեցի փոխաբայի գլխաւորութեամբ Մեթոն թողլով, ինքն տասնումէկ ընկերներով 1715 մարտ 1'ին Մեթոնէ կը մեկնի՝ տակաւին Օսմանեան արշաւանքը չսկսած (§ 1922), և ծովագնաց ճանապարհորդութեամբ ապրիլ սկիզբը Վենետիկ կը հասնի, և արգելարանի քառասնօրեան լրացնելով մայիսի կէսին քաղաք կը մտնէ, և յատուկ վարձուած տուն մը կը հաստատուի (Մխի. 272)։ Վենետիկ չատոնց Հայ գաղթականութիւն մը ունէր՝ որուն գլուխը կը գտնուէր այն ատեն Խաչատուր Կարնեցի վարդապետը, նա ալ Կ-Պոլիսէ փախստական։ Վենետիկ 1512'է սկսելով հայերէն տպագրութեանց տեղը եղած էր ընդհատ շարունակութեամբ. ուսումնական զարգացման միջոցները ունէր առատապէս՝ դարուն պահանջին համեմատ, Արեւելքի հետ յարաբերութեանց գլխաւոր կեդրոնն էր, և օտարներն ընդունելու և պաշտպանելու աւանդական զգացում մը կը տիրէր։ Վենետիկ ուրեմն լաւագոյն միջավայրն էր, ուր ուսումնական զարգացման հետամուտ Արեւելցի մը, և իր ազգին համար աշխատելու մտադիր Հայազգի մը, կրնար ամէն դիւրութիւններ գտնել իր նպատակին հետեւելու համար։ Եթէ Մխիթարի ձեռնարկը այդ ճիւղին վրայ ամփոփենք, պէտք է ըսել, թէ այդ տեղափոխութեամբ իսկապէս նա իր նպատակին ծառայած կ'ըլլար, և այդ վայրկեանէն Մխիթարի ուսումնական ձեռնարկը տիրապէս իր հիման վրայ կը հաստատուէր։ Կ-Պոլիսէ և Զմիւռնիայէ փախուստներու ատեն, Մխիթար վարանոտ և անորոշ էր տակաւին, իսկ Մեթոնի մէջ հաստատուիլը կարծես թէ իր նպատակին ուրացումն էր։ Միւս կողմէն Արեւմտեան գետնին վրայ, և Լատին կրօնամոլութեան շրջանակին մէջ, հնար չէր անկախ դիրքով մը տեղական յարաբերութեանց հետ չփուիլ և անոնցմէ օգտուիլ, և պէտք էր ըստ ամենայնի անոնց համակերպիլ. և Մխիթար՝ որ Մեթոնի մէջ լոկ անձնական պաշտպանութեան համար հռոմէականութեան հպատակած էր, այստեղ տեղական եկեղեցականութեան տարազն ալ առանձնելով, և գփեւոնեբւո, կօչէկնեբւո և ֆլեւբինեբւո նէւբն ու յեւը անոնց նմանցնելով (Մխի. 275), ամփոփողական պայման մը կը կատարէր, որուն արդարացումը միայն ուսումնական զարգացման փաստին

վրայ կը կայանայ։ Մեթոն միացած եօթնե-րէն մին հոն վախճանած էր, երկուքը պա-շարումէն առաջ հեռացած, և չորսը Տաճ-կաց ձեռքը գերի իյնալով, Հայերու կող-մէն փրկանքով ազատուած էին, և լրենց-ներուն միացած։ Մխիթարի և ընկերներուն վիճակը Վենետիկի մէջ լաւ էր շնորհիւ այն արգահատանքին, զոր Պեղոպոնէսի արկած-եալ Հայազգիները կը ներշնչէին, ոչ միայն իրենց համազգիներուն, այլ աւելի օտա-րազգիներուն, որոնք ամէն կերպով կը փութային անոնց պէտքերը հայթայթել։

**ՍՈՒՐԲ ՂԱԶԱՐ ՎԱՆՔԸ**

**1937.** Բայց գլխաւոր պէտքը հաստա-տուն բնակավայր մըն էր, վանական միա-բանութեան և ուսումնա-կան աշխատութեան յար-մար տեղ մը, ուր կարե-նային ամփոփուիլ Մեթո-նի փախստականները, և կրնային աշա-կերտութիւն և յաջորդութիւն կազմել, և տեւողական հաստատութեան ձեւ տալ։ Այդ բանը մասնաւորներու ձեռքով ըլլալու գործ չէր, Վենետկեան հանրապետութեան իշխանութիւնը պէտք էր՝ որ թէ տեղը տար և թէ պետական հաստատութիւնը շնորհէր։ Երկու տարիէ աւելի պէտք եղաւ որ այդ խնդիր լուծուէր. ոչ միայն յարմար տեղ մը գտնուէր, այլեւ պետական օրէնքը յար-գուէր, որ կ'արգիլէր քաղաքին մէջ նոր վանական հաստատութիւն մը աւելցնել։ Վենետիկէ չհեռանալու նպատակով, ստի-պողական համակերպութիւն գտնուեցաւ քաղաքին շրջափակէն դուրս գտնուող կղզի-ներուն մէջ փնտռել, և անոնց մէջ տրա-մադրելի և յարմարագոյն երեւցաւ Սուրբ Ղազար (San Lazzaro) անունը կրող փո-քրկագոյն կղզեակ մը, քաղաքէն նուազ հեռի քան ուրիշ կղզեակներ։ Այդ կղզեակը 810'էն առաջ անբնակ նկատուած, այն տա-րին տրուած էր Բենեդիկտեան կրօնաւոր-ներու, որոնք վերջապէս զայն լքած էին շատ մը անյարմարութեանց համար, և 1182'ին նուիրած էին Լեւոն Բաոլինի (Leone Paolini) ազնուականին մը, որ մէջը եկեղեցի մը և ուրկանոց մը կը հաստատէր բորոտ-ներու համար։ Այդ առթիւ է որ կղզեակը Սուրբ Ղազար անունը կը ստանայ, աղքատ և բորոտ Ղազարոսին աւետարանական առա-կէն (ՂԿՍ. ԺԶ. 19), որ Լատիններէն գոյու-թիւն ունեցող անձ մը և սուրբ մը նկատ-ուած է, և Պաղեստինի Հիւրընկալ ասպետ-ներուն ալ իր անունը տուած է։ Չորս դար ետքը, երբոր բորոտներ նուազեցան, մու-րացիկներու բնակութեան յատկացուեցաւ, և 1660'ին Կրետէէ փախչող Դոմինիկեան-ներուն տրուեցաւ, որոնք այլուր փոխա-դրուելէ ետքն ալ իրենց ձեռքը պահած էին զայն, գրեթէ ամայի վիճակի մէջ։ Այդ կղզին է որ շատ մը օրինական քննութեանց և պայմանադրութեանց ենթարկուելէ ետքը 1717 օգոստոս 26'ի վճռով Վենետկոյ ծերա-կոյտէն շնորհուեցաւ Մխիթարի մշտնջենաւոր բնակութեան, օրական պատարագի մը մա-տուցման, և տարեկան ութը լիտր մոմի նուիրման պայմանով՝ յօգուտ Դոմինիկեանց (Մխ. 298)։ Մխիթար իրեններով ստացու-թեան կը մտնէր 1717 սեպտեմբեր 8'ին (Մխ. 301), և պէտք եղած նորոգութիւն-ները կատարելով բնակութիւնն ալ հոն կը փոխադրէր 1718 ապրիլին վերջը (Մխ. 303)։ Այս է Սուրբ Ղազարի վանքին հա-մեստ սկզբնաւորութիւնը, որ հետզհետէ նորոգութիւններով և շինութիւններով վա-յելչացաւ, և ծանծաղուտները լեցնելով ըն-դարձակուեցաւ, բայց աւելի պայծառացաւ գրական արդիւնքներով։

**ՄԽԻԹԱՐԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

**1938.** Մենք առիթ ունեցանք Մխիթար Սեբաստացին ցուցնել իբրեւ իր հայրենա-կանց եկեղեցւոյն սիրա-հար, բայց և ուսումնա-կան զարգացման բուռն հետապնդող մը. որ եթէ առաջին կէտը երկրորդին կը զոհէր, բայց և ստէպստէպ դժուարին կացութեան մէջ կը գտնուէր, զի չէր կրնար առաջինին խիղ-ճը արմատաքի սիրտէն քանդել։ Այդ է պատճառ, որ Մխիթար յաճախ կը տես-նուի ինքն իրեն հակառակ դիրքերու մէջ, մերթ իբր անկեղծ հռոմէադաւան գովուած, և մերթ իբր հայադաւան ամբաստանուած պապութեան առջեւ։ Անդստին սկիզբէն՝ երբ 1717 սեպտեմբեր 20'ին Վենետիկ հաս-տատուելուն համար Հռոմի շնորհաւորու-թիւնները կ'ընդունէր (Մխ. 305), միւս կողմէն կ'ամբաստանուէր թէ իրեններ ու-ղիղ հռոմէականութիւն չեն քարոզեր (Մխ.

304)․ ուստի կը պարտաւորուէր քարոզութենէ ձեռք քաշել, և ինքն անձամբ Հռոմ երթալ իր անձը և իր միաբանները արդարացնելու համար։ Սուրբ Ղազարի մէջ հաստատուելէն քիչ օր ետքը 1718 մայիս 7'ին Վենետիկէ կը մեկնէր, և յունիս 2'ին Հռոմ կը մտնէր։ Դժուար չէր Հռոմի մէջ ուզուած արդարացումը պատրաստել բացարձակ համակերպութեամբ առաջարկուած պայմաններուն, և յօժարափոյթ արտայայտութիւններով յարգանաց և մեծարանաց, և Մխիթար զանց չըրաւ այդ միջոցները գործածել։ Խնդրոյ գլխաւոր նիւթ մըն էր այն ատեն կաթոլիկութեան յարողներուն Հայոց եկեղեցին դիմելու կամ երթալու խնդիրը, որ մինչեւ հիմայ տեղի ունեցած բոլոր եղելութեանց ալ սկզբնապատճառն էր։ Հայ կաթոլիկներ յատուկ եկեղեցի չունէին, և Լատիններուն երթալը կառավարութեան կասկածներուն տեղի կու տար։ Հայ կաթոլիկներ պատրիարքարան չունէին, և օրինական խորհրդակատարութիւններ՝ որոնք քաղաքական կամ կենցաղական նշանակութիւն ունէին ազգահամարի տեսակէտէն, ինչպէս են մկրտութիւն ու պսակ ու թաղում, իրենց կողմէ չէին կրնար կատարուիլ, և Լատինաց դիմելով օտար հպատակութեան ձեւ կը ստանային։ Ըստ այսմ անհրաժեշտ պահանջ մը կը դառնար, որ գոնէ այդ առիթներուն Հայոց եկեղեցին դիմեն անկաշկանդ։ Լատիններ կ'ընդդիմանային բացարձակապէս, իսկ կաթոլիկ Հայեր հարկին հպատակելու պատրաստ էին, եթէ խիղճերնին պղտորող չըլլար։ Մխիթար և Խաչատուր պաշտպան կանգնեցան այդ միտքին, ինչպէս Մխիթարի վերագրեալ գրուածէն ալ կը տեսնուի (Մխի․ 320)։ Խնդիրը Հռոմի ատեանն ալ եկած էր, ուր գիջողութեան գաղափարը յաղթեց, անշուշտ կաթոլիկութեան հրապոյրը ընդարձակելու համար։ Մխիթար յաջողութեամբ իր գործը վերջացնելով 1718 դեկտեմբեր 6'ին Հռոմէ մեկնեցաւ և 20'ին Վենետիկ հասաւ (Մխի․ 323)։ Իսկ խնդիրին պաշտօնական որոշումը 1719 յունուար 12'ին տրուեցաւ Հռոմի հաւատաքննութեան ատեանէն, թէ Հայոց եկեղեցիները երթալը կը ներուի, չ[illegible] [illegible], իրեն միտքով հայադաւան եկեղեցւոյն, [illegible], և [illegible] (Մխի․ 321)։ Հռոմէական դարձուածներու պաշտօնական արտայայտութիւն մը, որ եթէ մէկ կողմէ գործնական լուծում մը կու տայ, միւս կողմէ կը դատապարտէ նախընթացաբար իր Լատին քարոզիչներէն ցուցուած աններողութիւնը, և անոնք պատասխանատու կը կացուցանէ կաթոլիկութեան պատճառով կատարուած արկածներուն։ Մխիթարի վանական հաստատութեան մասին այլեւս շատ ըսելիք չունինք, զի ըսելիքները անոր չարունակական ընդարձակման և զարգացման կը պատկանին, և նոր եղելութիւններ չեն ներկայեր։

1939․ Հռոմէական կուսակցութեան ոյժ տուող ուրիշ ձեռնարկի մը վրայ ալ խօսեցանք իր կարգին (§1894),

**ԱՆՏՈՆԵԱՆ ՄԻԱԲԱՆՈՒԹԻՒՆ**

որուն կեդրոնը դրուեցաւ Լիբանան լեռներու վրայ Մարոնիներու մէջ։ Անոր հիմնարկուներն եղած էին չորս աշխարհիկ հոգեւէր անձեր, որ երբ ունեւորութիւննին իրենց նպատակին ծառայեցնել կը փափաքէին, ստիպուեցան հալածեալ փախուստով գործերնին լքանել։ Այդ պարագան կը պատասխանէ Գանձակեցի պատրիարքին օրով տեղի ունեցած շարժումին, և Բերիոյ առաջնորդ Աբրահամ Արծիւեանի բանտարկութեան (§ 1920)։ Երբ պարագաները քիչ մը խաղաղացան, Մուրատեան եղբայրներ բարեդէպ առիթ սեպեցին Բերիոյ վաճառատան գործը վերջացնել, և իրենց ձեռնարկին նիւթական միջոցները հայթայթել։ Այդ նպատակով Աբրահամ և Յովհաննէս Բերիաեկան որ կարգադրեն։ Այնտեղ Ջահկեցի Ունիթորներէն Գրիգոր Կիւլլէրեան աբեղային հանդիպելով, անոր կը յանձնեն Կղեմէս ԺԱ պապին ուղղուած աղերսագիր մը 1718 թուականով, և [illegible], Մինաս և Յակոբ ստորագրութեամբ, որով պապական օրհնութիւն, և իրենց ձեռնարկին հաստատութիւն, և Մարոնից ուղղուած յանձնարարագիր կը խնդրեն, որպէս զի անոնցմէ պարտուպատշաճ օժանդակութիւն գտնեն։ Իրենց ձեռնարկը կը բացատրեն, ինչպէս ուրիշ տեղ ալ յիշեցինք (§

1894), ըսելով թէ կ'ուզեն շինել մին փոքր անապատ, զի անդ բնակեսցեն անապատաւորք քահանայք ի Հայոց ազգէն (ԱՆՏ.), ինչ որ մինչեւ այն վայրկեան պարզ վանականութեան նպատակի վրայ միայնին կը ցուցնէ։ Մուրատեան եղբարց ուղղակի իրենց անունով դիմելը՝ և ուրիշ որեւէ անձի անուն չտալը կը ցուցնէ, թէ ձեռնարկին բուն հեղինակները իրենք են եղած, և ոչ Բերիոյ առաջնորդը, որ այդ միջոցներուն բանտէ ազատած, բայց Բերիա դառնալ չհամարձակելով, Տրապիզոն և Եդեսիա կը թափառէր. իսկ Մուրատեան եղբայրներ, արդէն միաբանական կենաց սկզբնաւորութիւն ըրեր էին Աֆքարի մէջ (§ 1894)։ Եթէ վերջէն Արծիւեան ինքզինքը իբր Անտոնեանց հիմնադիր ուզեց ցուցնել, պարզապէս վերջին պարագաներէ օգտուելով էր, որ համարձակեցաւ իւրացնել ուրիշներու ձեռնարկը (ԴԻԹ.101)։ Հռոմ ղրկուած նամակը Փրոփականտայի ժողովէն նկատողութեան կ'առնուի 1719 յունիս 19'ին, և վերոյիշեալ Կիւլլէրեանէ և Հռոմ գտնուող Յովսէփ Ասսեմանի և Գաբրիէլ Հավա Մարոնի վարդապետներէ ստացուած տեղեկութեանց վրայ, Փրոփականտան իր հաւանութիւնը կու տայ Մուրատեան եղբարց ձեռնարկին, աւելցնելով դպրոցի և ուսումնական նպատակի պայմանը։ Որոշումին թուականն է 1720 մարտ 8, որ փութով կը հաղորդուի Մարոնի պատրիարքին։ Այդ միջոցին Բերիա դարձած էր Աբրահամ Արծիւեանը, Եդոկիոյ կուսակալին Բերիա փոխադրուելէն օգտուելով (ԴԻԹ.49), և առիթէն օգտուեցան Մուրատեանք ալ եկեղեցական աստիճան ստանալու. Յակոբ քահանայութեան, և Աբրահամ սարկաւագութեան, իսկ Յովհաննէս վախճանած էր Բերիա, և Մինաս լոկ կրօնաւորութեամբը կը շատանար։ Երեք միացող եղբայրներուն վրայ չորրորդ ընկեր մը աւելցած էր՝ Անտոն Աստուածատուրեան Բերիացին։ Պապին կողմէն Մարոնի պատրիարքին յղուած գիրը իրեն արդիւնքը ունեցաւ, զի 1721 յուլիսին Մարոնի պատրիարքին կոնդակով՝ պանդուխտ Հայեր արտօնուեցան կանոնաւոր վանք հիմնել Մարոնցիներէ շրջափակուած գաւառին մէջ, ուր Խազնեան իշխանական տոհմն ալ մարտ ամիսէն անդառնալի շնորհած էր վանաշինութեան գետինը (ԱՆՏ.)։

**ԱՆՏՈՆԵԱՆՔ ԵՒ ԱՐԾԻՒԵԱՆ**

**1940**. Մուրատեան եղբարք, որ այլեւս պաշտօնապէս Անտոնեան միաբաններ եղած էին, նոյն 1721'ին հիմնարկեցին իրենց վանքը Քրէյմ կոչուած տեղը, Ղոստա գիւղին մօտ, և Հայ եկեղեցի մը յանուն Ս. Փրկչի, և սկսան հետզհետէ բազմանալ թէ աշակերտութեան և թէ ապաստանի դիմող նոր հետեւորդներով։ Արծիւեան առաջնորդին Բերիա մնալը երկար չեղաւ, զի Կոլոտի օրով տրուած նոր հրամանին հետեւանօք, նա ալ 1720'ին աքսորուեցաւ Ավրատ կղզին (ԴԻԹ.54), զոր յիշեցինք Աւետիքի աքսորին առթիւ (§ 1866)։ Բայց այդ աքսորն ալ երկար չեղաւ, զի Սիւրիական Տրիպոլսոյ Գաղղիական փոխհիւպատոս Դարպէ, եղանակը գտաւ իր երաշխաւորութեամբ Արծիւեանը իր մօտ պահելու, որ այդ առթիւ քաղաքին Մարոնի եկեղեցւոյն մէջ ձեռնադրութիւններ ալ կատարեց 1721 մայիսին, և քահանայութեան բարձրացուց Աբրահամ սարկաւագը, և Գէորգ Տէր-Բարսեղեան դպիրը որ Իսահակ կոչուեցաւ (ԱՆՏ.)։ Թէ Բերիացի Անտոնեան միաբանները իրենց առաջնորդին համար, և թէ Դարպէ փոխհիւպատոսը իր պաշտպանեալին համար, դիմումներ կը տեղացնէին Կ-Պոլիս անոր բացարձակ ազատութիւնը ստանալու։ Գաղղիական դեսպանատունն ալ իր միջնորդութիւնը կը սաստկացնէր, սակայն Կոլոտ պատրիարք հաւանութիւն կու տար միայն Երուսաղէմի վանքը փոխադրուելուն։ Ասոր վրայ Արծիւեանի պաշտպանները՝ տեղական միջոցներով և ճարտար դարձուածներով կրցան զայն Երուսաղէմի վանքին տեղ Լիբանանի Նորաշէն վանքը փոխադրել 1722 ապրիլին, ուր և մնաց այնուհետեւ երկար տարիներ։ Այդ պարագան է որուն վերագոյնդ կ'ակնարկէինք (§ 1939), թէ Արծիւեան վերջին և պատահական պարագաներէն օգտուելով կրցաւ ինքզինքը իբր Անտոնեանց միաբանութեան հիմնադիր կարծեցնել։ Եպիսկոպոսի մը և նոյն իսկ թեմակալ եպիսկոպոսի մը ներկայութիւնը՝ պիտի յորդորէր բարեմիտ կրօնաւորները զայն պատուել և յարգել, և անոր հանդէպ համակրութիւն և հնազանդութիւն

ցուցնել, ինչ որ կը քաջալերէր Արծիւեանի ձեռնարկու և մեծամիտ ընթացքը։ Արծիւեան իբրեւ Բերիոյ եպիսկոպոս, բայց Բերիայէ փախստական, հեռուէն կը կատարէր լատինամիտներու վրայ իր հովուական հսկողութիւնը՝ նոյն իսկ Անտոնեան միաբաններու միջնորդութեամբ, և գլխաւորապէս Յակոբ Մուրատեան, կամ պապենական կոչմամբ Յակոբ Յովսէփեան, և Իսահակ Տէր-Բարսեղեան կամ Բարսեղեան աբեղաներուն ձեռքով։ Իսկ վանքին մէջ՝ եկեղեցական հպատակութեան պահանջները՝ հետզհետէ գերագոյն դիրք մը տուին Աբրահամ Արծիւեանի, Թէպէտեւ վանքին մեծաւորը, կամ Մարոնցիներէ իւրացուցած կանոնադրութեան համեմատ, Հայ Անտոնեան միաբանութեան աբբահայրը՝ Աբրահամ Մուրատեանը կամ Աթթարեանն էր, և Արծիւեան իսկ ճանչցած էր անոր պաշտօնը, և իբր թեմակալ հաստատած անոր իշխանութիւնը (ԱՆՏ.)։ Այս եղաւ պատճառը, որ ապագային խնդիրներու դուռ բացաւ Արծիւեանի յաջորդներուն և Անտոնեան միաբանութեան միջեւ (ԴԻԹ. 73)։ Լիբանանի մէջ հաստատուած Հայ վանք մը՝ ապաստանարան դարձաւ ամէն անոնց, մանաւանդ եկեղեցականներու, որոնք իրենց կաթոլիկութեան հակամիտութեամբը, կամ ուրիշ անձնական պատճառներով, Հայոց պատրիարքարանին առջեւ կասկածաւոր դառնալնուն համար՝ խոյս տալու և ապահով տեղ մը մնալու պէտքը կը զգային։ Կը յիշուի թէ Շղթայակիրը այդ պարագային մտադրութիւն դարձնելով, արգելած ըլլայ Քրէյմի վանքը նոյն իսկ ուխտագնացութեան անունով երթալը (ԱՆՏ.), ուզելով առաջն առնուլ կաթոլիկական հրապուրանաց, որք Հայ եկեղեցական կարգաց հանդէպ թուլութեան, և օրինաւոր Հայ իշխանութեանց դէմ ըմբոստութեան քաջալերութիւն կ'ընծայէին։

**1941.** Ժամանակակից ցրուեալ եղելութիւնները քաղելէ ետքը, դառնանք նորէն Մայրաթոռոյ անցքերը պատմել, որք կապուած են Հայաստան հողի վրայ երեք տէրութեանց պատերազմներուն հետ (§ 1922)։ Հայեր՝ որ ամէն կողմէ յարձակումներու ենթարկուած

ԴԱՒԻԹ ԲԷԳԻ ՇԱՐԺՈՒՄԸ

էին, չփոթ և վարանոտ դիրք մը ունէին, չկարենալով երկու մահմետական տէրութեանց ալ գործակցիլ, և չստանալով երրորդ քրիստոնեայ տէրութեան ազդու ձեռնտուութիւնը։ Օրիի ձեռքով ցանուած ազգային ապահովութեան հետապնդութիւնը՝ անպտուղ չէր մնացած, և անոր սերմերը բողբոջած էին, և Հայ խումբեր կազմուած էին զէնքի դիմելու և պատերազմներ մղելու հրոսակներու դէմ։ Արդէն յիշեցինք Աղուանից կաթողիկոս Եսայիի և Տփղիսի առաջնորդ Մինասի ռազմաշունչ դիմումները, որոնք հարիւր հազարով զինեալ Հայեր կը խոստանային Ռուսական բանակին նիզակակից (§ 1931)։ Լեզգիներուն 1722'ին Գանձակի վրայ արշաւանքը, աւերածն ու կոտորածը, Հայոց շարժումին առաջին գրգիռը տուին, և Յովհաննէս Գուգարացին գլուխ կանգնեցաւ Ուտէացի և Գուգարացի խումբերուն, և Թարթար գետին մօտ Լեզգիներու դէմ ճակատելով, անոնք ետ դառնալու ստիպեց (ՁԱՄ. Գ. 784)։ Բայց այս չէր բաւեր երկրին խաղաղութեան, բոլոր յոյսը Պետրոս Մեծի հետ գալիք Ռուսական բանակին վրայ էր։ Վրացիք և Հայք շարժման մէջ էին, Վրացւոց կ'առաջնորդէր Վախտանգ, Հայերուն կ'առաջնորդէր Եսայի կաթողիկոս, որ 10,000 բանակի մը գլուխ կանգնած կը հրճուէր, համարելով Նոր Նորոգեալ զիշխանութիւն Հայոց (ՋԱԼ. 48). և Վախտանգը կը քաջալերէր, թէ ահա հասեալ է ժամանակ փրկութեան քրիստոնէից (ՋԱԼ. 49)։ Բայց Ջօլաքի դաշտին ցնծութիւնը շուտով կը ճնշուէր, երբոր կը լսէին թէ Պետրոս Կասպից կողմերը նուաճելէ ետքը ետ կը դառնար (ԼէՕ. 311), Օսմանցոց հետ համաձայնութեան (§ 1932) հեռաւոր տեսակէտէն յորդորուած։ Բայց անգամ մը որ ռազմիկ հոգին շարժուեր էր, Հայեր չկրցան շուտով հանդարտիլ։ Հին Սիւնիքի և Արցախի բնակիչներ ալ ոտքի կանգնած, հրամանատարի մը պէտքը կը զգային, և Ստեփանոս Շահումեան Վրաց իշխանին դիմելով, անոր զօրագլուխներէն հայազգի Դաւիթը կը բերէր Ղափան 1722'ին, որ է նոյն ինքն հռչակաւոր դարձած Դաւիթ Բէգը, կամ Դաւիթ Սիւնին, կամ Դաւիթ Հալիձորեցին, որ բաւական տարիներ շարժման մէջ պահեց

խալամական գունդերը։ Դաւիթ գլուխ կանգնելով ըմբոստացած Հայերուն, և չունենալով մեծ ձեռնարկի միջոցներ, պարտաւորուած փոքր խումբերով պիտի նեղէր թշնամին, և այդ ձևին մէջ ցուցուց իր յաջողակութիւնը։ Իր առաջին ձեռնարկը կը սկսի 400 հոգիով, և այնչափով կ'ընկճէ 16,000 հոգւոյ բազմութիւն մը տեղացի այլազգիներէն կազմուած, Պարսիկ հովանաւորութեան ներքև։ Դաւիթի աջակից և օգնական էր Մխիթար Ղափանցին, որուն միացան և Փարսադան Հալիձորեցի մելիքը, և փեսան Աւետիք Հալիձորեցի քահանան, պահ մը դժկամակ ըլլալէն ետքը, ինչպէս նաև Թորոս Զավրնդուրեցին, Բայինդուր Ղափանցին, Ստեփանոս Շահումեանը, Պապն ու Պալին։ Ասոնցմէ իւրաքանչիւրը իր սեփական գունդով կիրճերու մէջ և սարերու վրայ յաջողութիւններ կը տանէին բազմաթիւ թշնամիներու վրայ. իսկ ամէնուն հոգին ու հրամանատարը և ձեռնարկները կարգադրողը Դաւիթն էր, իր հեռատեսութեամբը, արթնութեամբը ու ժրութեամբը, և մանաւանդ հեղինակութեամբը ու կարգապահութեամբը նշանաւոր գլուխ մը։ Շատ նկարագրական է Տաթեւի մելիք ուրացեալ և մատնիչ Դաւիթը ձերբակալելէ ետքը, 12 օր եկեղեցւոյ դուռը չարունակ կրկնել տալը. Լոյս Լուսաւորչի հատաւ, ճոյ ուրացող մերժաւ, և անկէ ետքը գլխատել տալը (ԱԼՕ. Բ. 366)։ Մենք մտադիր չենք այդ կռուութեանց բոլոր մանրամասնութիւնները պատմել, նպատակնիս է միայն ժամանակին կացութիւնը պատկերացնել։

**ՄԱՅՐԱԹՈՌԻ ԿԱՑՈՒԹԻՒՆ**

**1942.** Երբոր Հայաստանի հիւսիսակողմը կատարեալ ապստամբութեան ձև էր առած՝ Պարսկական թագաւորութեան տագնապին և դուրսէն խուժող հրոսակներուն պատճառով, և Վրաստան ու Աղուանք ու Սիւնիք, իրարու համամիտ, բայց ոչ իրարու ձեռնտու՝ գործեր կը կատարէին Պարսիկներու ձեռքը մնացած գաւառներու մէջ, Երևան և Էջմիածին արդէն Օսմանեան արշաւանքին ենթարկուած էին։ Պարսիկները կը կասկածէին Աստուածատուր կաթողիկոսի վրայ թէ Ռուսներու հետ յարաբերութեան մէջ է. նամակ մըն ալ ձեռք անցուցեր էին, Սիւնիքի և Աղուանքի Հայ գունդերուն ուղղուած, որուն համար զայն բանտարկեցին ալ, և հազիւ 4000 ոսկւոյ տուգանքով արձակեցին։ Աստուածատուր չնայելով այդ տառապանքներուն՝ չդադարեցաւ Հայոց շարժումը քաջալերել, և Ռուսական պաշտպանութիւնը հրաւիրելու հետամուտ ըլլալ։ Պարսիկներ Աստուածատուրը ստիպեցին Դաւիթը յորդորել, որ դուրսի հրոսակները վանէ, իսկ տեղացիներու և Պարսիկներու չվնասէ. պարտաւորեցին նաև որ սոյն նպատակով Աղուանք և Վրաստան ալ երթայ։ Աստուածատուր գրեց ու գնաց, բայց ինչպէս Հայերը իրենց շարժումէն ետ կենալու չխրատեց։ Եթէ Աստուածատուր Պարսիկներուն կասկածելի էր, Օսմանցիներուն ալ վստահելի չէր, որոնք այս պատճառով արգելեցին Հայերուն միւռոնօրհնէքի առթիւ Էջմիածին երթալ։ Յատուկ պաշտօնեայ մըն ալ 1723'ին Էջմիածին գալով յանդիմանած էր Աստուածատուրը, թէ Ռուսաց օգնելու բանակ կը պատրաստէ, և սպառնալիքներ ըրած։ Նոյն թուականէն սկսած էին Երևանի նահանգին մէջ մղուած պատերազմները (§ 1941), և այն օրէն Աստուածատուր իր հանգիստը կորսնցուցած էր, և թափառական կը շրջէր նուազ վտանգաւոր կողմերը երթալով, կամ քաջալերութեան պէտք եղած տեղեր երևնալով։ Նա այլևս խոհականութեան հետևողը չէր (§ 1928), զի ոչևս խորհուրդներու շրջանն էր, և պարագաներ գործերը գահավիժած էին։ Երևանի և Էջմիածինի Օսմանցիներէ գրաւումը տեղի ունեցաւ 1724 տարւոյն երկրորդ կէսին սկիզբները, և մեծ ցոյցերով տօնուեցաւ Կ-Պոլսոյ մէջ (ԺՈՒ. 331)։ Ասով աւելի ևս վտանգուեցաւ Աստուածատուրի դիրքը, որ հազիւ տարի մը ևս ապրեցաւ, միշտ երերեալ և տատանեալ կացութեան մէջ, ստէպ խուսափելով Մայրաթոռէն, տիրապետողներու կեղեքումներէն ազատելու համար, և մերթ հոն հանդիպելով անհրաժեշտ կարգադրութիւնները ընելու համար (ՋԱՄ. Բ. 43)։ Կը յիշուի թէ Սիմէոն վարդապետ Երևանեցի, Կ-Պոլսոյ նուիրակ (ՋԱՄ. 29), կաթողիկոսին անունով յաջողեցաւ Էջմիածինի աթոռին և չորս վանքերուն հա-

մար ճողաջփոռնեան, այսինքն ապահարկու-թեան հրովարտակ ստանալ սուլտան Ահմէ-տէն (ՋԱՄ. 241), բայց այսչափը չէր բաւեր հարստահարութիւնները խափանելու, և պա-տերազմի աղէտները արգելելու։ Աստուա-ծատուր կաթողիկոսի մահը տեղի ունեցաւ Օշականի մէջ, պատահական արկածով մը. զի 1725 հոկտեմբեր 10'ին, տանիքի մը վրայէն լուսինի խաւարումը դիտելու առ-թիւ, յանկարծ գլխիվայր կը գլորի, և գլու-խէն ծանրապէս վիրաւորուելով չորս ժամէն կը վախճանի։ Թշնամաբար տանիքէն վար մղուած ըլլալու կասկածը հիմնաւոր նկատ-ուած չէ (ՉԱՄ. Գ. 801)։ Միայն քանի մը ամիս առաջ, մարտ 1'ին, վախճանած էր Մովսէս Ջուղայեցին ալ (ՏՅՈ. Բ. 50), որուն կաթողիկոսանալէ հրաժարելուն վրայ Աստ-ուածատուր Համատանցին աթոռ էր բար-ձրացած (§ 1917)։ Մովսէս ալ բաւական նե-ղութիւն քաշած էր Ջուղայի մէջ Աֆղան-ներուն արշաւանքին պատճառով (§ 1930)։ Աստուածատուր թաղուեցաւ Ս. Հռիփսիմէի վկայարանին գաւիթը (ՋԱՄ. 28), իսկ Մով-սէս իրեն վանքին եկեղեցւոյն հիւսիսային դրան սեմը (ՏՅՈ. Բ. 50)։

**1943**. Անօրինակ և անկերպարան վի-ճակի մէջ կը թողուր Աստուածատուր Մայ-րաթոռը իր մահուան պա-հուն, զի կատարեալ ան-իշխանութիւն կրնայ բսուիլ տիրող կացութիւնը։ Որ-չափ ալ Օսմանցիք տիրած էին Երեւան քա-ղաքին և շրջակայից, և Ռուսներ հասած էին որ այն կողմերուն վրայ իրենց տիրա-պետութիւնը հաստատեն (§ 1932), սակայն տակաւին պատերազմի վիճակն էր որ կը շարունակէր, և Օսմանցիք հետամուտ էին անդրագոյն եւս ընդարձակել իրենց տէրու-թիւնը, մինչեւ Սիւնիք և Աղուանք։ Պար-սիկներ թէպէտ յաղթուած, և Մահմուտի ու Թահմազի մէջ երկփեղկած, սակայն բո-լորովին ձեռք քաշած չէին իրենց սեփական

ԱԹՈՌՈՅ ԹԱՓՈՒՐՈՒԹԻՒՆ

գաւառներէն։ Հայերն ալ՝ որ զէնքի դիմած էին, և ոչ միայն հրոսակներուն և Պարսիկնե-րուն, այլեւ Օսմանցիներուն դիմադրելու ձեռնարկած էին, անխտիր միատեսակ նկա-տելով բոլոր իսլամական գունդերը։ Մայր-աթոռոյ միաբանութիւնը ցրուած և փա-խած, օրինական ընտրութիւն մը ընելու վիճակի մէջ ալ չէր գտնուեր։ Ջուղայեցիք ալ Աֆղաններուն բռնակալութեան ներքեւ հազիւ թէ իրենց կենսական խնդիրներուն կը բաւէին, և Մայրաթոռի հոգը ստանձնե-լու և աթոռի պարապութեան դարմանը նայելու միջոցներն իսկ չունէին։ Հարկաւ Աստուածատուր, իբրեւ խոհական և հոգա-ծու անձ, նախատեսած պիտի ըլլար այդ վիճակը, սակայն ուզելով ալ չէր կրնար ազդու դարման մը գտնել, և իրմէ ետքը կաթողիկոսական ընտրութեան մասին միտք յայտնել և հրահանգ տալ։ Թուցէ Մովսէս Ջուղայեցին բերելու խորհուրդ տուած ըլ-լար, եթէ նա կանխաւ մեռած չըլլար. իսկ Դաւիթ Ջուղայեցին, որ Մովսէսի յաջորդած էր, իբր Ջուղայի վանքին առաջնորդ և վիճակին արքեպիսկոպոս, որչափ ալ ծըք-նուշկեայ և Բարեկարգութեան Նախանձախնդիր կը կոչուի (ՏՅՈ. Բ. 53), և իբր իմաստուն կը գովուի, սակայն իրեն վերագրուած բարե-կարգութիւններն ալ, զորս պիտի յիշենք, կը ցուցնեն, թէ իսկապէս շնորհեալ ծնեալ էր յամենայնէ աշխարհային խլքոմանց (ԽՉԿ. 9), և կնճռոտ ժամանակին պահանջած գոր-ծի մարդը չէր, որ Աստուածատուր անոր վրայ կարենար մտադրութիւն դարձնել։ Կ'երեւի թէ իր շուրջն ալ ուշադրութիւն գրաւող մէկ մը չտեսաւ. և նոյն իսկ պա-տահական արկածով մը մեռնելը՝ առիթ չը ներկայեց Մայրաթոռին յաջորդութեան վրայ մտածելու։ Այսպէս թէ այնպէս, պարագա-ները դժուար կացութիւն մը կազմած էին, և հայրապետական աթոռին երկար ատեն պարապ մնալը կը սպառնային։

# Տ· ԿԱՐԱՊԵՏ Բ· ՈՒԼՆԵՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՆԱԽԸՆԹԱՑ**

**1944**· *Մայրաթոռին տարօրինակ պարապութեան առեն Յովհաննէս Կոլոտ Կ-Պոլսոյ պատրիարքը պէտք կը զգայ բացառիկ կացութեան բացառիկ դարման հոգալ, և Մայրաթոռի միաբանութեան և Ջուղայի ժողովուրդին մինչև այն առեն վարած ընտրողական գործունէութիւնը՝ Կ-Պոլսոյ պատրիարքարանին և Թուրքիոյ հայաբնակութեան վրայ դարձնելով՝ նախաձեռնարկ ըլլալ կաթողիկոսական ընտրութեան, և Կ-Պոլսոյ մէջ ընտրել և օծել տալ նոր հայրապետը։ Այդ գործողութեան համար պէտք եղած համառօտ ժամանակը կը ցուցնէ թէ Կոլոտ ընդհանուր համամտութիւն գտաւ իրեն առաջարկին համար, և զօրաւոր դիտողութեան կամ ընդդիմութեան չհանդիպեցաւ։ Նախորդ կաթողիկոսին 1725 հոկտեմբեր 10'ին մահուան թուականէն՝ մինչև յաջորդին օծումը 1726 փետրուար 27'ին, միայն չորս ու կէս ամսոյ միջոց մըն է, որուն մէջ պիտի հաշուենք մահուան գոյժին Էջմիածինէ Կ-Պոլիս հասնիլը՝ ժամանակին տրամադրելի միջոցներով, և նորընտիրին իր գաւառէն Կ-Պոլիս գալը, և անօրինակ արարողութեան համար պէտք եղած պատրաստութիւնները, որոնք հարկաւ վերոյիշեալ չորսուկէս ամիսներուն մեծագոյն մասը գրաւած են։ Կոլոտի նոր առաջարկին փաստերն եղած են, Էջմիածինի և Երևանի՝ Օսմանցոց իշխանութեան անցած ըլլալը, ընտրուելիք կաթողիկոսին համար ոչ ևս Պարսից՝ այլ Օսմանցոց վեհապետէն հաստատութիւն ընդունելու պէտքը, Պարսից թագաւորութեան Մահմուտի և Թահմազի մրցակցութեամբ իբր անգլուխ նկատուիլը, և ամէնէն աւելի՝ Երևանի գաւառին չփոթը, Մայրաթոռի միաբանութեան տարտղնած ըլլալը, և այն կողմի Հայութեան կեդրոնի սեպուող Ջուղային՝ բռնապետութեան ներքև գտնուիլը։ Կ-Պոլսոյ բարձրաստիճան եկեղեցականութիւնը, քահանայական դասը, իշխանական դասակարգը և բոլոր ժողովուրդը, համակամ հաճութեամբ ընտրութիւնը կատարելու հաւանեցան, և ուղելով ամէնուն կողմէ պատկառելի ճանչցուած մէկ մը առջև անցընել, առանց դժուարութեան և երկպառակութեան համաձայնեցան Գաղատիոյ առաջնորդ Կարապետ Ուլնեցի եպիսկոպոսին վրայ։ Երևանեցին Կարապետը կը ներկայացնէ իբր* այր ծեր և անձնեայ, մեծաշուք և առաքինեան *(ՋԱՄ·28), որ գոնէ արտաքին ձիրքերուն համար վկայութիւն մըն է. իսկ Չամչեան՝ որ ժամանակով հեռու չէ, և այս միջոցէն սկսելով կրնայ իբր բնագիր հեղինակ նկատուիլ, կը կոչէ զայն՝* այր շքեղ և իմաստուն, քաղցր անձամբ և գովելի վարուք, և օրհնեալ յաչս ամենեցուն *(ՉԱՄ·Գ·801)։ Կարապետ՝ Ծծկեր մականունով յիշուած է սաէպ, առանց իմաստ կամ չարժառիթը բացատրելու, և կ'երևի թէ մանկութեան առենէն մնացած յորջորջում մըն է։ Արդէն մակդիր անուններու սովորութիւնը շատ ընդարձակուած կը տեսնենք այդ միջոցին։ Յատուկ հրաւիրակներ կը ղրկուին Անկիւրիա՝ Կարապետը մայրաքաղաք առաջնորդելու, և պէտք եղած նախապատրաստութիւնները կը կատարուին Ս· Աստուածածնի մայր եկեղեցւոյ մէջ երբեք չտեսնուած, և նորէն տեսնելու ալ հաւանականութիւն չունեցող արարողութեան համար։ Պէտք եղած 12 եպիսկոպոսներու ներկայութիւնն ալ կը հոգացուի, և 1726 փետրուար 27'ին Մեծ պահոց երկրորդ կիրակէին՝ Կարապետի կաթողիկոսական օծումը տեղի կ'ունենայ, նախընթաց կիրակամուտէն սկսելով ծիսական կարգին կատարումը։ Չէ յիշուած թէ ով էր 12 օծող եպիսկոպոսներուն առաջինը, որ հանդիսադիրն եղած է այդ նշանակելի օրուան։ Կոլոտ դեռ եպիսկոպոս չէր և չէր կրնար մասնակցիլ. Շղթայակիրն ալ եկած չէր, թէպէտ յարմարագոյնն եղած կ'ըլլար։ Կ'երևի թէ հրաւէր ստանալով ալ չէ կրցած գալ, որ իր կողմէն Կ-Պոլիս ղրկած է Հաննա վարդապետը, որ Կ-Պոլիս*

եկած կը գտնենք այդ օրերը։ Կարապետ Ուլնեցին, զոր մենք Կարապետ Բ ըսինք, ուրիշներէ Կարապետ Գ բռնուած է, Կարապետ Կեղեցին երկուքի բաժնելնուն համար (§ 1375),

**ՍԻՄԷՈՆԻ ԿԱՐԾԻՔԸ**

**1945**. Այդ ընդհանուր համաձայնութեան և համերաշխ գործակցութեան հանդէպ, մէկ մը միայն կը գտնենք տժգոհ և տհաճ, և եղած գործողութիւնը մեղադրող ու դատապարտող, և այն է Սիմէոն Երեւանեցին, Էջմիածինի կաթողիկոսը, որ պատշաճից կանոնները ոտնակոխ ընելու չափ առջեւ կը քալէ իր յիշատակներուն մէջ։ Նա կը խղճէ ուղղակի ընտրեալին դէմ յարձակիլ, զոր կը կոչէ ծեր և դողդողիտ, և ամենևին անտեղեակ ուղխոութեան դատաւոյն և իշխանութեան աթոռոյ կաթողիկոսութեան (ՋԱՄ·235). բայց բուռն կերպով կը յարձակի Կոլոտի դէմ, կոչելով զայն խորամանկ, շփոթ, նենգաւոր և խաբող, որպէս բերեն է Բաղէշոյ և այնց կողմանց (ՋԱՄ·235). ձեռնարկը չար դիտաւորութեամբ եղած կ'ըսէ, և Կոլոտը չարութեան գործած կը դատէ (ՋԱՄ·29)։ Բայց Երեւանեցին անագան դատող մըն է, և գործին պարագաներուն ինքն մասնակից եղած չէ, գուցէ տեղեկութիւններ քաղած ըլլայ նախկին Սիմէոն Երեւանեցիէն, որ այդ միջոցին Ջմիւռնիոյ նուիրակ կը գտնուէր (ԴԻԻ·Ա. հգ.)։ Երեւանեցի կաթողիկոսին բոլոր մեղադրանքը կը հիմնուի սա պարագային վրայ, որ Կոլոտ իր տեղեկագիրով հաղորդած է Օսմանեան կառավարութեան Կարապետի ընտրութիւնը, և սոյն տեղեկագիրին զօրութեամբ ստացուած է Կարապետի հաստատութեան հրովարտակը։ Զօրղայր, կ'ըսէ, և շայլը խնդրանաց գրեանն Կարապետ կաթողիկոսին՝ ինքն Յովհաննէս վարդապետն գրէ է յետ բերանոյն առ թագաւորն գրելով, թէ զոր խնդրոյ աղէկս միայ զԿարապետ վարդապետն կաթողիկոս արարէ, և թագաւորն եւս գրէ, թէ զոր աղայն Յովհաննէս ֆաթրէջին ետուր շնորհան (ՋԱՄ·235)։ Երեւանեցիին ցաւն այն է, թէ անկէ առաջ էջմիածնական կաթողիկոսն, ինքն և կամ խորհրդով նուիրակօքն, և կամ է յետ այմանց իշխանաց, անխտիր գրէին շարայ առ թագաւորն Օսմանցւոց, և միայն է նոր հրաւէրն կաթողիկոսացուին՝ որպէս է բերանոյ ժողովրդոյն գրեալ։ Իսկ Կոլոտին կողմէն Կարապետի համար գրուած տեղեկագիրին վրայ կը գրէ, թէ այսու հնարիւք, այր Յովհաննէս նենգաւոր հատանէ զգիրս և շարայր կաթողիկոսն որբոյ աթոռոյս է դրանէ թագաւորին, և յետոյ կոչէ արքանէ, որ և ծնոյ այս ամփոփութեան (ՋԱՄ·235)։ Գործը կանխամտածութեամբ եղած ցուցնել ուզելով, կ'ըսէ եւս, թէ Կոլոտ է վաղուց հետէ ցանկայր այդ բանին, և միտքերը Կոլոտի վրայ պղտորելու համար կ'ակնարկէ, թէ Կարապետ էր յոյնկացւոցն, և մանաւանդ է վիճակէն Սըսոյ (ՋԱՄ·235)։

**ԿԱՐԾԻՔԻՆ ՀԵՐՔՈՒՄԸ**

**1946**. Երեւանեցիին խորհրդածութիւնները քաղեցինք, անոր միտքը որոշակի բացատրած ըլլալու համար։ Նա կ'ուզէ Մայրաթոռի գերիշխանութեան և գերագահութեան նախանձախնդիր երեւալ, և Կոլոտը իբր անոր դաւաճանած ցուցնել, Կ-Պոլսոյ աթոռին վրայ դարձնելով գերիշխանութեան ձեւը, և կառավարութեան հետ ուղղակի յարաբերութեան մէջ գտնուելու արտօնութիւնը։ Սակայն Երեւանեցին ինքն է, որ յարաբերութեանց կանոններուն թափանցած չէ, և չատ թեթեւակի կերպով կը ձգնի Կոլոտի ձեռնարկը դատապարտել։ Նախընթաց ժամանակներու մէջ Էջմիածնայ աթոռը, օտար տիրապետութեան մը մէջ կը գտնուէր, և Օսմանեան հպատակ չէր, և իբրեւ օտար մը պատահական յարաբերութիւններ կրնար ունենալ Օսմանեան կառավարութեան հետ, Պարսկական տէրութենէն հաստատութիւն ստանալէն ետքը։ Սակայն Աստուածատուրի մահուան ատեն քաղաքական կացութիւնը տարբերած էր, Էջմիածին Օսմանեանց ձեռքն անցեր էր, և Էջմիածինի գահակալը Օսմանեան հպատակ մը եղած էր, և այլեւս Տաճկահպատակ Հայութեան մաս կը կազմէր։ Արդ նախապէս և սկիզբէն այս Հայութեան միակ և օրինաւոր գլուխ ճանչցուած էր Կ-Պոլսոյ պատրիարքը, և ինչ որ այդ Հայութեան կը պատկանէր, պէտք էր նոյն գլուխին միջնորդութեամբ հաղորդուէր կառավարութեան, և Էջմիածինի կաթողիկոսն ալ պէտք էր նոյն ձեւին ենթարկուէր, ինչ ալ ըլլային ազգային ներքին շրջանակին մէջ

կրօնական և եկեղեցական փոխադարձ յարաբերութիւնները։ Հակառակ ձեւ մը անհնար էր գործածել, բայց եթէ Տաճկահպատակ Հայութիւնը երկուքի բաժնելով, կամ Տաճկահպատակ Հայութեան պաշտօնական գլուխը ոչ եւս Կ-Պոլիսը՝ այլ Էջմիածինը ճանչնալով։ Կոլոտի բռնած ընթացքը բացարձակապէս պետական յարաբերութեանց պահանջն էր։ Երեւանեցին է, որ ամենեքին անտեղեակ կը գտնուի ուղղափառութեան դաւանոյն և իշխանութեան, և ոչ թէ Կարապետը անգիտակ է, կամ Կոլոտը դաւաճան է։ Եթէ Երեւանեցին այդ բաներու անտեղեակ ըսելով՝ եղելութեան կողմէն արդարացնենք, սակայն կը դժուարանանք զայն արդարացընել, երբ քսութեան ձեւերու ալ կը դիմէ, և Կարապետին ի վիճակէն Սըսոյ, այսինքն պարզ ծննդեամբ Զէյթունցի ըլլալը կը յիշէ, զի այն նշանակութենէ զուրկ պարագայ մըն է, և ոչ երբեք Կարապետի Սսոյ միաբան կամ Սսոյ աթոռէն եպիսկոպոսացած ըլլալը կը ցուցնէ. ապաթէոչ յայտնապէս գրած կ'ըլլար զայն, եթէ այնպէս եղած ըլլար։ Իբր քսութիւն կը նկատենք նաեւ Կարապետը յոյնկարգաց կոչելը, լատինամիտ և կաթոլիկութեան հակամէտ ըսել ուզելով։ Կարապետի լատինամիտ ըլլալուն ոչ մի փաստ չկայ մէջտեղ, որչափ ալ համէտականք ըսեն, թէ փրկեաց նորա յուրացութեան և հաղորդութեան առ ուղղափառն պապն (ՓԱՓ. 934)։ Գրուած նամակը, նոյն իսկ համէտականներու ըսելովը, առաջարկ մըն էր միայն, որպէսզի պապը իրենները խրատէ, և թողցէ ի մէջոյ կրծից երկպառակութեան ազգին, և մի՛ եւս ծփեսցէ ի հանապազօրեայ աղմկաց (ՁԱՄ. Գ. 803)։ Այս դիմումը հաղորդութենէ աւելի յանդիմանութիւն պէտք է ըսուի, ինչպէս եղած էր Աղեքսանդր Ջուղայեցիի նամակը (§ 1897)։ Իսկ յորդորութեան՝ ազնիւ զգացման նշանակ է միայն, որ հակառակորդի հետ ալ կրնայ գործածուիլ։ Այսու հանդերձ գըրուած նամակին պատճէնը հրատարակուած չէ, տեղ մը գտնուելն ալ յիշուած չէ, և անհիմն չենք սեպեր այն կարծիքը, որ կը պնդէ թէ թէպէտ առաջարկեցաւ գրել, սակայն կաթողիկոսը ընտանեկերպեալ իրեն եղած թելադրութիւններուն, զանց ըրաւ (01 ՕՐԱ. 131)։

1947. Եղելութեան վրայ պէտք եղած տեսութիւնները պարզելէն ետքը, չէինք ուզեր հետազօտել, թէ ինչ պարագայ կրնար Երեւանեցին յորդորել այդպէս գինուելու Կոլոտին դէմ, որ թէպէտ նոր և բացառիկ քայլով մը, բայց բացառիկ պարագայէ ստիպուած, կը յաջողէր բացառիկ կերպով հայրապետական աթոռին յաջորդութիւնը ապահովել, և Հայ եկեղեցին երկարատեւ անգլուխ մնալու վտանգէն ազատել։ Մեր տեսութեամբ կըրնայ ենթադրուիլ, թէ Երեւանեցի կաթողիկոսը նախանձայոյզ զգացումէ մղուած ըլլայ Մայրաթոռոյ բարձրութիւնն ու իրաւասութիւնը պաշտպանելու. սակայն այս տեսութիւնն ալ իրական և իսկական հիմ մը չունի, և յուզուելու առիթ չընծայեր, զի Կոլոտ ոչ մի կերպով Մայրաթոռի իրաւունքներուն մնասել ուզած չէր, և իւր գործն ալ միջնորդի դերէն անդին չէր անցներ։ Աւելի հաւանական կը կարծենք ըսել, թէ Երեւանեցին՝ կաթողիկոսական աթոռին վրայ գտնուելով, կը փափաքէր ամէն բան իւր ձեռքը կեդրոնացնել, և ամէն գործ իւր հրամանին ներքեւ առնուլ, ինչպէս իրեն տարապայման տարածեալ գործունէութենէն ալ կը գուշակուի։ Արդ՝ տեսնելով որ Տաճկաստանի գործերուն նկատմամբ իւր ձըգտումները արգելք կը գտնէին Կ-Պոլսոյ պատրիարքներուն իրաւասութենէն, և կարծելով որ այդ դրութիւնը Կոլոտի օրէն և Կարապետի ընտրութենէն սկիզբն առած է, իւր բոլոր զայրոյթը թափած է արդէն վախճանած Կոլոտի գլխուն, որով ընդդիմախօսի հանդիպելու վտանգէն ալ զերծ կը մնար։ Այդ տեսութեան կը նպաստէ դիտել, որ Սիմէոն շատ երկարօրէն կը խօսի նախորդ կաթողիկոսներու Օսմանեան վեհապետներու հետ ուղղակի յարաբերութիւն պահելուն վրայ (ՋԱՄ. 234—238), ինչ որ իրեն հնար չեղաւ, թէպէտ շատ ձգտեցաւ այդ նպատակին, և մինչեւ իսկ ուզեց Կ-Պոլսոյ մէջ կաթողիկոսական ժողովրդութեան հաստատել պատրիարքական իշխանութեան վրայ ուղղակի ազդեցութիւն բանեցնելու համար։ Սակայն պատրիարք և ժողովուրդ դէմ դրին, և Սիմէոնի խորհուրդը խափանեցաւ (ՋԱՄ.

Բ. 49), և երբ պատրիարքական իշխանութիւնը իրեն դէմ գտաւ, ներկաները մոռնալով՝ Կոլոտի վրայ միտքը սեւեռեց, և Կոլոտի վրայ թափեց իր ցասումը։ Այդ մեր խորհրդածութիւնները կը հաստատուին նոյն իսկ Կ-Պոլսոյ աթոռին դէմ խիստ ակնարկներովը։ Տաճկաստանի վիճակներուն ուղղակի պատրիարքութեան ներքեւ անցնելուն կէտն ալ չօշափելով, Սիմէոն կը գրէ, թէ ոչ ևս ընդվզել և ամբարտաւանել յանդէպ նորոց առաջնորդացն, Բովալ գնօքէ առն կանան, և ոչ յաղն արկանել զզաւթին հայրապետին. և թէ ի Պոլսոյ նորոյ ժողովէն կոչեցեալն, գնացեալ է յամբարշտականութենէ ի յամբարշտականութեան, և զեղխութեան նորին, այսինքն Մայր աթոռին, է յինքեան դրանեալ, հեռացեալ է ճանապարհէն ճշմարտութեան (ՋԱՄ. 56)։ Մենք ուզեցինք Սիմէոն Երեւանեցիի տարօրինակ տեսութեան, և Կոլոտի պէս կարող և արգիւնաւոր և արժանաւոր անձի մը վրայ յայտնած ձախող գաղափարին ուսար բացատրել, ապաթէ ոչ մի հիմնական պէտք չունէինք Կարապետի ընտրութեան վրայ ծանրանալու, կամ Կոլոտի նախաձեռնութիւնը ջատագովելու, զի համարձակապէս օրինաւոր և օգտակար եղած կը դատենք բացարիկ պարագաներու ներքեւ կատարուած բացառիկ կարգադրութիւնը։

**1948.** Կարապետի կաթողիկոսութեան հանդէսը կ'երեւի թէ այն տարին բոլորովին տարբեր կերպարան մը տուաւ Մեծպահքի օրերուն։ Մեծպահքի կիրակի մըն էր երբ օծումը կատարուեցաւ 1726 փետրուար 27'ին, և ըստ երէց առաջ, որ բուն կ'ըլլայ, մարտ 2 չորեքշաբթի օր, եպիսկոպոսական ձեռնադրութիւն ալ ունեցաւ, և Յովհաննէս Կոլոտ պատրիարք, տակաւին վարդապետ, եպիսկոպոսութեան բարձրացաւ Կարապետ կաթողիկոսի ձեռնադրութեամբ, Գումքաբուի մայրեկեղեցւոյն մէջ։ Իսկ յետ ամսոյ (ՉԱՄ.Գ. 802) երկրորդ ձեռնադրութիւն մըն ալ տեղի ունեցաւ, և եպիսկոպոսութեան բարձրացան Յովհաննէս կամ Հաննա Երուսաղեմացին՝ Շղթայակիրին փոխանորդը, Մարտիրոս Կուտինայի առաջնորդը, և Թովմա՝ Կոլոտի աշակերտներէն երիցագոյնը (ԿՈԼ. 27)։ Մենք հաւանական կը կարծենք այդ երեքներուն ձեռնադրութիւնը դնել անդամ 1726 ամառուան մէջ, վասն զի Հաննա վարդապետը Երուսաղէմէ եկած էր Կարապետի կաթողիկոսութիւնը շնորհաւորելու Շղթայակիրին կողմէն, և անոր նամակին փոխադարձ պատասխանը բերելու (ԱՍՏ. Բ. 10), ինչ որ քանի մը ամիսներու կը կարօտէր։ Այդ ձեռնադրութիւնը առիթ ընծայած է մեծահանդէս տօնախմբութեան մը. իսկ Կոլոտի ձեռնադրութեան առանձինն և յուր օր մը կատարուած ըլլալը կը մեկնենք, իբր առանց հանդիսական ձեւակերպութեանց եղած գործ մը, պատրիարքի եպիսկոպոսանալը՝ իրեն համար ոչ այնչափ փառաւորութեան պայման, որչափ եւ միացած պայմանի մը լրացումն նկատելով։ Ուրիշ հանդիսական տօնախմբութեան մըն ալ առիթ ընծայեց Վոսփորի վրայ գտնուող Օրթաքէօյ գիւղի Խնդրակատար Ս. Աստուածածին եկեղեցւոյն օծումը, որուն վերաշինութեան ձեռնարկած էր Կոլոտ՝ Շղթայակիրին մեկնելէն ետքը (§ 1934), Օծման կատարողը եղած է նոյնինքն Յովհաննէս եպիսկոպոս Կոլոտ, ինչպէս Հաննա կը գրէ, թէ նա ինքն որբագործեաց եկեղեցին, որբոյս զհօտն։ Իսկ կաթողիկոսին համար կը գրէ, թէ կայր նորեալ յաջակողմն որբոյ բեմին հանդերձ իւր համանմանեղեական զարդուն (ՀՆՆ. 156)։ Անշուշտ յարմարագոյն դատուած է, որ եպիսկոպոս պատրիարքն ինքն հանդիսադիր կանգնի իւրաչէն եկեղեցւոյն օծման, և առիթ ունենայ եպիսկոպոսական մեծ հանդէս մը կատարելու։ Օրթաքէօյի եկեղեցւոյն օծման թուականը միեւնոյն 1726 տարին է, իսկ ամսաթիւը յիշուած չէ։ Բայց հաւանական կը սեպենք զայն դնել օգոստոս 21'ին, Վերափոխման ութերորդ օրը, նկատելով որ մինչեւ ցարդ Վերափոխման ութօրէքը յատկապէս կը տօնուի Օրթաքէօյի մէջ իբրեւ օր տարեկանաց և տարեդարձ նաւակատեաց։ Նկատողութեան արժանի է եւս, որ հանդէսին օրը Հաննա իբր ձեռնադրեալ եպիսկոպոս կը մասնակցէր արարողութեանց։

**ԿԱՐԱՊԵՏԻ ԳՈՐԾԵՐԸ**

**1949.** Օրթաքէօյի եկեղեցւոյն օծման հանդէսը մեծ հռչակ ունեցած է, նոյն օր հրատարակուած Երուսաղէմի պատրիարքու-

*թեան պատկանող երեք կանոնագրութեանց կամ սահմանադրութեանց համար, որք ժողովրդական խօսից մէջ Հաննայի նուէրներ անուանով կը յիշուին, բայց ոչ թէ Հաննա եպիսկոպոսը, այլ Կարապետ կաթողիկոսն է անոնք արտասանողը, և Հաննա իբր պատմութեան հասուցած է մեզի անոնց յիշատակութիւնը։ Որչափ ալ Կարապետ Գաղատիոյ առաջնորդութեան առնէն, զամենայն ճոխակոր գործս Երուսաղէմի փառաւորել փառօք, և ըստ առաջելոյն Դաւթի, հայել յանդորրանս և հանգչել (ՀՆՆ. 159), սակայն պէտք չենք զգար անոր նախաձեռնութեան վերագրել Երուսաղէմի աթոռին ապագային համար գրուած կանոնները, քանի որ Կոլոտը կար մէջտեղ, Երուսաղէմի առաջին սրտացաւը և ամէն գործողութեանց հոգին, և քանի որ դեռ Կ-Պոլիս էր Հաննա, Կոլոտի և Շղթայակիրի միտքերուն արժանաւոր գործադիրը։ Հարկաւ Շղթայակիրին յատուկ հրահանգներով եկած էր Հաննա Երուսաղէմ, և Երուսաղէմի բարեկարգուելէն ետքը՝ անգամ մըն ալ չխանգարուելուն համար հայրապետական իշխանութեամբ հաստատուած կանոններու պէտքը ամէնուն ալ միտքին մօտ պիտի ըլլար։ Այդ կանոնագրութեան գլուխները և բացատրութիւնները անշուշտ ուշի ուշով ուսումնասիրուեցան՝ հանդիսական հրատարակութենէն առաջ, և ոչ միայն Երուսաղէմի պաշտօնեաները՝ Կոլոտ և Հաննա պէտք եղածը գործեցին, այլև եկեղեցականութեան և աւագանիին համաձայնութիւններն ալ առնուեցան, որպէսզի տրուելիք վճիռը ազգային օրէնք և աննահանջելի կանոնադրութեան համարուի (ՀՆՆ. 159)։ Երեք կանոնները պաշտօնական ձևով յառաջ կը բերէ Հաննա, և որովհետև կ'ըսէ թէ կաթողիկոսը անոնք գրեալ և իւր կնքեալ սահմանադրեաց, ուստի ամենայն իրաւամբ կրնանք յառաջ բերուած պատճէնը, իբրև բնագիրին իսկականը ընդունիլ։ Այս նախապատրաստութեանց վրայ, Օրթաքէօյի եկեղեցւոյն օծման օրը, երբ նուակատեաց կարգը լրացաւ և հանդիսադիր պատրիարքը կարդաց Սողոմոնի աղօթքը (ՄԱՇ. 185), և ուր մաշտոցի խորագիրը կ'ըսէ, թէ արքեպիսկոպոսն ելեալ յաթոռն օրհնեսցէ զժողովուրդն (ՄԱՇ. 187), կաթողիկոսն ինքն կանգնեցաւ բեմին վրայ, և պատշաճ ատենաբանութեամբ խօսեցաւ յականջս ամենայն ժողովրդոց և քահանայից և վարդապետաց զերիս սահմանադրութիւնս (ՀՆՆ. 157)։ Այլ թէ ինչու, Օրթաքէօյի եկեղեցւոյն, և ոչ աթոռանիստ մայր եկեղեցւոյ մէջ տեղի ունեցաւ այսպիսի հանդիսաւոր և պաշտօնական գործողութիւն մը, որոշակի ճշդուած չէ։ Թուեցէ վերաշինեալ եկեղեցւոյն հանդէսին առաւելագոյն բազմութիւն մը ունենալ կը յուսացուէր, բայց աւելի հաւանաբար՝ թուեցէ վերջնական որոշումը լրացած չէր նախընթաց կիրակէին, որ մայրեկեղեցւոյն ալ տարեկանաց օրն էր։*

**1950.** *Այդ երեք կանոնները կ'արժէր թերևս Հաննայի տուած բնագրական ձևովը յառաջ բերել (ՀՆՆ. 157), բայց մենք նախընտրած ենք բացատրական ձևով վերլուծել այդ տեսակ գրուածները։ Առաջին կանոնը կ'արգելէ որ պատրիարք կամ վէքիլ չկարենայ ըլլալ եկամուտ ոք, և այդ կոչումին պարագաները մեկնելով, եկամուտ կը սեպէ այն որ, 1. Յաթոռ Երուսաղէմ չէջէ նստել. և 2. Կատարելագէտ Հին և Նոր կտակարանաց ուղղերթեալ. և 3. զամենայն զելս և զմտաւ որքոյն Երուսաղէմայ աթոռոյն չէջէ իմացեալ, և 4. Քաղաքաց ժամանակաց չէջէ վարժեալ յամենայն գործս որքոյ Երուսաղէմի։ Այդ չորս պարագաներ այնպէս կը մեկնուին թէ Երուսաղէմի վանքին միաբան չեղողը պատրիարք չկրնար ընտրուիլ (ԱՍՏ. Բ. 11)։ Սակայն Յաթոռ Երուսաղէմ նստել ըսելը Երուսաղէմի միաբան ըսել չէ, մանաւանդ որ միւս երեքը պարզապէս Երուսաղէմի գործերուն հմտութիւն կ'ենթադրեն, որ առանց միաբան ըլլալու ալ կը ստացուի։ Բացասական կողմէն կ'արգիլուին մարդահաճութեան և անօրէնութեան ազատ եղած ընտրութիւնները, ըստ արտաքնոց և կամ ըստ ներքնոց, որով ներքնոց միաբան եղողներուն հետ հաւասար գիծի վրայ կը դրուին և ընտրելի կը նկատուին արտաքնոց եղողներ, կամ միաբան չեղողներն ալ, ինչպէս էին Գրիգոր Շղթայակիրն ալ և իրեն յաջորդ ընտրուած Նալեանն ալ, որ Երուսաղէմի միաբան չէին, և հնար չէր*

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ

ԿԱՆՈՆՆԵՐՈՒՆ ՎԵՐԼՈՒԾՈՒՄԸ

*բացարձակապէս այնպիսի կանոն մը հաս-տատել, որով Շղթայակիրի իսկ հրաժարիլ պէտք կ'ըլլար։ Երկրորդ կանոնը կ'արգելէ Երուսաղէմի համար աշխարհական կամ կար-գաւոր վերակացու և դիտող գործակալ տա-նել, զոգա և նուէր առնամբ, և կամ այլ ինչ անուանակոչութեամբ։ Այս կանոնը եթէ չատ խստիւ իմացուէր, պիտի արգելէր Կոստանդ-նուպոլսոյ պատրիարքարանէն քննիչ կամ այցելու կամ բարեկարգիչ ալ յղել. սակայն Կ-Պոլսոյ աթոռը այդ իրաւունքը միշտ գոր-ծածեց, մինչև իսկ Ծայրագոյն Կաթողիկոսն ալ ղրկեց, իբրև առժամեայ պատրիարք և լիազօր իշխանութեամբ։ Որովհետև ուրիշ է բացառիկ պարագաներու առեն ժամանա-կաւոր կարգադրութիւն մը, և ուրիշ է հաստատուն կերպով Երուսաղէմի մատակա-րարութիւնը Կ-Պոլսոյ պատրիարքութեան փոխանցելը, որ մինչև այսօր եղած չէ, և վերջին օրերը յղացուած միտքերը՝ կանո-նիս անհամաձայն կը ցուցնեն։ Ըստ այսմ երկրորդ կանոնին պարզապէս նպատակն է, Երուսաղէմի պատրիարքութիւնը Կ-Պոլսոյ պատրիարքութեան պաշտօնեաներու ձեռ-քով մատակարարելու դրութիւնը արգելել։ Այդ միտքն է որ բացարձակապէս կը յայտ-նուի երրորդ կանոնին մէջ, որ կ'արգելու կցել և միացուցանել զպատրիարքութեանն սրբոյն Սաղիմայ ընդ առաջնորդութեանն Կոստանդնու-պօլսոյ, կամ այլ ինչ տեղւոյ, որպէսզի միւս չհանի Երուսաղէմի գիրքին, և չարգելէ անոր ծառայակ լինել իւրեանց իշխանութեան (ՀՆՆ. 158)։ Ճիշդ այս երրորդն է երեք կանոններուն հիմնականը, և կ'արժէր զայն առաջին ընել, մինչև իսկ եթէ միակ ըլ-լար՝ բաւական էր իսկական նպատակը յայտ-նել։*

**1951.** *Երեք գլուխները ամփոփելով բուն հիմնական և հաստատուն կանոն կը*

**ԲՈՒՆ ՆՊԱՏԱԿԸ**

*նկատենք, Երուսաղէմի պատրիարքութիւնը չփո-փանել Կ-Պոլսոյ կամ ու-րիշ մէկ, զորօրինակ Սսոյ, աթոռին հետ կցելով, և Երուսաղէմը փո-խանորդներու կամ մատակարարներու չի յանձնել։ Ըստ այսմ բսուած է, որ ոչ միայն Կոստանդնուպոլսոյ, այլև որևէ այլ ինչ տեղւոյ առաջնորդութեան հետ պիտի չկցուի Երուսաղէմի աթոռը։ Եւ այս ընդարձակ առումին պատճառով՝ Կ-Պոլսոյ պատրիար-քութիւնն ալ առաջնորդութեան անունով յիշ-ուած է, և ոչ թէ Երևանեցիէն գործած-ուած նախատական ձևով (§ 1947)։ Իսկ ընտրելի պատրիարքին վրայ աւելի կարևոր պայման մը կը տեսնենք, Երուսաղէմի ըն-թացքին գիտակ և գործերուն վարժ եղած ըլլալ, և մարդահաճութեան և անօրինութեան ողոքով ընտրուած չըլլալ, քան թէ պարզա-պէս ի սուրբ Երուսաղէմ նստել, կամ թէ Երու-սաղէմի միաբան եղած ըլլալ. զի գլխաւոր պայմաններուն յարմար չեղողը կը մերժուի հաւասարապէս, եթէ ի ներքոյ, այսինքն եթէ միաբան ալ եղած ըլլայ։ Երկու կա-նոններուն վերջը նշանակելոյ յանգերգը կը կրկնուի. իսկ երրորդին ծայրը աւելի սաստ-կութեամբ կը գրուի, որոշեալ է տերունական սուրբ Հոգւոյն (ՀՆՆ. 158)։ Այս ալ կը հաստատէ, թէ այս կէտն է, որ կանոն-ներուն բուն նպատակը կը կազմէ։ Հաննա պատմագիր, այդ ամէնը յառաջ բերելէ ետ-քը փափկանկատութեամբ մը կ'աւելցնէ, թէ այս կանոններուն չարժաւորին էր, ոչ գտցի ներքոյ եկեղեցւոյն, և ոչ գործականք արտաքոյ եկեղեցւոյն, այլ միայն ընտրականք ի սրբութեան։ Իսկ եթէ այդ կանոնները կազմելու արժանիքը կաթողիկոսին կը վերագրէ, պարզապէս պատշաճից օրէնքի համակեր-պութիւն է ըրածը, թէ ոչ անհնար է որ անոնց նախաձեռնութիւնը Կոլոտէ և Հան-նայէ սկսած չըլլայ (§ 1949)։ Թէպէտ Հաննա որոշակի չգրեր, սակայն յայտնի է թէ ե-պիսկոպոսութեամբ փառաւորուած, և այդ կանոններու հաչակուելովը ուրախացած, նա ինքն Հաննա փութաց չուտով Երուսաղէմ առնել հաստատուած կանոնները, և Շղ-թայակիրն ալ ուրախացնել եղելութիւն-ները հաղորդելով։*

**1952.** *Կարապետ կաթողիկոս, Կոս-տանդնուպոլսոյ մէջ ընտրուած և օծուած,*

**ԿԱՐԱՊԵՏ ԵՒ ԼԱՏԻՆՆԵՐ**

*անհակառակ կերպով ըն-դունուեցաւ թէ Մայրա-թոռոյ և թէ Պարսկահպա-տակ Հայութեան կողմէն, և հրաւիրուեցաւ իսկ փութալ իւր աթոռը հասնիլ։ Ինքն ալ համամիտ էր օր յառաջ աթոռանիստին մէջ գտնուիլ, սակայն պա-*

*բագաներ շատ աննպաստ էին, զի Օսման-
ցիք Երեւանի գաւառը գրաւելէն ետքը,
դէպի Ղափան յարձակումներու սկսած էին,
ուր ոչ միայն Պարսիկները, այլեւ Դաւիթ
բէգի հայազգունդերը իրենց դէմ կը պատե-
րազմէին* (§ 1943), *ուստի դիւրին չէր եւ ոչ
ալ խոհականութիւն էր Էջմիածին երթալ։
Այս պատճառով պարտաւորուեցաւ միջոց
մը Կ-Պոլիս մնալ, բայց իւր օրերը անգործ
անցընել չուզեց, եւ աշխատեցաւ համերաշ-
խութեան կերպերով բառնալ կաթոլիկամիտ
կուսակցութեան գայթակղութիւնը, խա-
փանել Հայոց եկեղեցիներէն խորշելու մը-
տանգաւոր դրութիւնը, եւ հաշտարար խա-
ղաղութիւն հաստատել Հայութեան մէջ։
Բանակցութիւններ եղան երկու կողմերու
մէջ, եւ Կարապետ կաթողիկոսի եւ իրեն
գործակցող, Թերեւս եւ առաջնորդող, Կո-
լոտ պատրիարքի կերպերը շինարար ազդե-
ցութիւն գործեցին, եւ շատ աւելի մերձա-
ւորութիւն յայտնուեցաւ լատինամիտ կու-
սակցութեան կողմէն։ Անոնք ուզելով որ
իրենք ալ պահանջի մը գոհացում տուած
երեւան, առաջարկեցին որ խափանուին
երեք սուրբ ժողովներուն տօներուն առթիւ
երգուած, Ով հրաշալի մանկունք շարականին
ծայրի երեք Տեդէ ես, եւ Աստանէր, եւ Պեղջեյէկ
տուները, որոնց մէջ նզովք կ'արձակուի
Քաղկեդոնի ժողովին եւ Լեւոնի տոմարին
դէմ։ Կաթողիկոս եւ պատրիարք հաւանեցան
այդ պեղչին, եթէ անով հնար պիտի ըլլար
ցանկացեալ խաղաղութիւնը հաստատել.
մանաւանդ որ այդ երեք տուները շարա-
կանին նախնական խմբագրութեան մաս չեն
կազմեր, եւ յետոյ մուծուած կցկտուր յա-
ւելուածներ են, ինչպէս որ պարունակու-
թիւնն ալ կը ցուցնէ։ Շարականը Նիկիոյ եւ
Կոստանդնուպոլսոյ եւ Եփեսոսի սուրբ ժո-
ղովներուն համար շինուած է, եւ անոնց
որոշումները կը յիշատակուին, եւ բնաւ ա-
նոնց հետ կապ չունին ոչ Դիոսկորոսի գու-
մարած Եփեսոսի ժողովը, եւ ոչ Մարկիանոսի
գումարած Քաղկեդոնի ժողովը, որոնք ժա-
մանակով յետնագոյն են։ Լեւոնի իսկ անկ-
եալ ոճ մը ունի՝ առջի հինգ տուներուն հետ
բաղդատուած ատեն, եւ բնաւ Հայ եկեղեց-
ւոյ կարգաց ու կանոնաց հակառակ չէր,
երեք յաւելուածական տուները ջնջել, եւ*

*ըստ այսմ ալ հրամայեցին կաթողիկոսն ու
պատրիարքը։*

**1953**. *Այս բուական եղաւ որ լատի-
նամիտ էջխտնտառքե և ծաղռվառքք ոչտան էրբե-
տեկէւ յէկեղեցէ Հայոց, եւ*

LԱՏԻՆԱԿԱՆ ԱՌԱՋԱՐԿՆԵՐ

*կոբողէկոսէն և պատրէարքէն տայէն յորգոբիան մեծ, եւ
կը յայտնէին բողոքս ընծա-
յէ* (ՋԱՄ. Գ. 803)։ *Նոյնինքն Լատին եպիս-
կոպոսն ալ* 1727 *ապրիլ* 2'*ին Կարապետ կա-
թողիկոսին այցելութեան եկաւ, եւ Հայոց
մայրեկեղեցին մտնելով աղօթեց, եւ կաթո-
ղիկոսին ու պատրիարքին հետ մտերմական
տեսակցութիւն ունեցաւ թարգմանի միջո-
ցաւ, ուսկից յետոյ կաթողիկոսն ալ այցե-
լութիւնը փոխանակեց փոխանորդ Մանուէլ
վարդապետը ղրկելով։ Լատինական հնա-
րագիտութիւն մըն է, որ երբ դժուարու-
թեան հանդիպին՝ քիչով գոհանան, եւ
մնացեալին վրայ լռեն, նորէն անոնց վրայ
անդրադառնալու համար, երբ առաջին
դժպհի տպաւորութիւնը անցնի։ Նոյնը գոր-
ծադրուած է այս անգամ ալ։ Հռոմէականք
կ'ըսեն թէ Լատին եպիսկոպոսին առաջար-
կութեան վրայ Կարապետ յանձն առաւ պա-
պին նամակ մը գրել, եւ այս է թերեւս հա-
տակոբեան նամակ կոչուածը, որ պատշաճ
ոճով կը խնդրէր, որ կրճէծ էրէկտառոն-
բեան վերցուի, եւ պապին կ'առաջարկէր որ
իրեններուն կրօնամոլ ձգտումները սանձէ,
որ ազգը մ' էստ ծփեոցէ է հանապազօրեայ աղմո-
կը։ Լատիններ իրենց սովորական ոճով պա-
տեհը հասած կը կարծեն, որով անմիջապէս
առջեւ կը նետուին տըլէ տըլ դոյմանք վտան
մբոբեան։ Բայց որովհետեւ անոնք կաթողի-
կոսէն եւ պատրիարքէն եւ հաւատարիմ հա-
յադաւան ժողովուրդէն չէին կրնար ըն-
դունուիլ, ուստի նամակը անպատասխանի
կը թողուի։ Հռոմէականք ալ կը գրեն, թէ
Կարապետ այլեւս ըստ եղէ* (ՋԱՄ. Գ. 803),
*եւ այսչափը կը բաւէ հաւաստելու որ Կարա-
պետ, որչափ ալ խաղաղութեան հետամուտ,
երբեք իւր եկեղեցւոյն հիմնական սկզբունք-
ներէն հեռացող չէր, եւ ոչ ալ յոյնէստացէ
մըն էր* (§ 1946)։

**1954**. *Ապրիլ* 2'*էն ետքը, որ Լատին
եպիսկոպոսին այցելութեան օրն էր, երկու
ամիս եւս Կարապետ Կ-Պոլիս մնաց, եւ տեո-*

նելով որ իրեն համար հոն ընելիք մնացած չէ, յունիս 7'ին կը մեկնի, հանդարտ ուղեւորութեամբ դէպ Էջմիածին երթալու համար։

**ԿԱՐԱՊԵՏ ՅԷՋՄԻԱԾԻՆ**

Նախ ամիս մը կը մնայ Պրուսա, անկէ կ'անցնի Անկիւրիա, ուր պէտք է ուրիշ ալ մնացած ըլլայ՝ իբր իւր նախկին աթոռը, և ուր կրնար անձնական գործեր ալ ունեցած ըլլալ։ Անկիւրիայէ կ'ուղեւորի Եւդոկիա, իսկ անկէ անդին իւր հանդիպած տեղերը յիշուած չեն։ բայց անշուշտ չէ կրցած զանց ընել Սեբաստիան, Երզնկան ու Կարինը, մինչեւ հասնէր Էջմիածին, ուր կը գտնուի 1728'ին սկիզբները, թէպէտ ամսաթիւը յիշուած չենք գտներ։ Ըստ այսմ ընտրութենէն երկու տարի ետքը Կարապետ կաթողիկոս իւր աթոռը հասած կ'ըլլայ, իբր տարիուկէս Կ-Պոլսոյ մէջ, և եօթը ութը ամիս ասդ և անդ ատեն անցընելէ ետքը։ Հարկաւ այդ միջոցին Մայրաթոռին մէջ եպիսկոպոս մը կար, որ իբր տեղակալ կամ փոխանորդ գործերու վարիչն էր. իսկ թէ ով էր, յիշատակներուն մէջ չենք գտներ։ Կանխաւ տրուած տեղեկութեանց համեմատ Կարապետ արդէն ծեր էր ընտրուած ատեն, թէպէտ ճիշդ տարիքը յիշուած չէ, բայց բաւական յառաջացեալ տարիք մը կ'ենթադրուի, որովհետեւ Էջմիածին հասնելէն ետքն ալ շատ չապրեցաւ, և յաջորդ տարւոյն վերջերը 1729 հոկտեմբեր 2'ին, Վարագայ խաչին հինգշաբթի օրը, վախճանեցաւ Էջմիածնի մէջ (ՉԱՄ. Գ. 805), և թաղուեցաւ Ս. Հռիփսիմէի վկայարանին գաւիթին ձախակողմը (ՋԱՄ. 29)։ Էջմիածնի մէջ անցուցած ժամանակին կարճութիւնն ալ, և իւր ծերացեալ տարիքն ալ չէին ներեր Կարապետի մեծ արդիւնքներ ունենալ, այսու հանդերձ գեղեցիկ յիշատակ մը թողած է Մայրտաճարի խորանին կամարին մէջ նկարել տալով երկոտասան առաքելոց պատկերները, համաձայն հին եկեղեցիներու աւանդական ձեւին, եւս և հոգալով [illegible]՝ Երեւանեցիին բացատրութեամբ (ՋԱՄ. 28), որով կ'իմանայ վաւերական կալուածագիրներ հին և նոր ստացութեանց համար։ Կարապետ չեկած շատ խառնակ և շփոթ էր Երեւանի գաւառին կացութիւնը, և թէպէտ յետոյ քիչուշատ կանոնաւոր ձեւի մտնելու կը սկսէր, սակայն Ղափանի կողմերը յուզմունքներ և պատերազմական շփոթներ նորէն արծարծուեցան Կարապետի գալէն ետքը։

**1955**. Դաւիթ Սիւնին, ժողովուրդին Դաւիթ բէգը (§ 1941), վերջին պատերազմ մը մղած էր 1725'ին Ղափան արշաւող Թիւրքմէն բազմութեան դէմ, անտայդ ելքով,

**ԴԱՒԻԹ ԲԷԳԻ ԳՈՐԾԵՐԸ**

զի թէպէտ մասնաւոր յաջողութիւններ ստացած էին ինքն և իւրեանները, սակայն արդէն մեռած էին Թորոս Զավրնդուրցին և Փարսադան Հալիձորեցին, գերուած էր Մխիթար Ղափանցին, գերի ինկած էր Ստեփանոս Շահումեանը, վիրաւորուած էր Պալի Փարսադանեան. բայց գերեալը բարեկամացաւ, գերեալը ազատեցաւ, և վիրաւորեալը բժշկուեցաւ (ՉԱՄ. Գ. 791), և Դաւիթ իւր կեդրոնը Շինուրէ Հալիձոր փոխադրելով, պատերը յարմար կը կարծէր [illegible] (ԼԵՕ. Բ. 372)։ Ձմեռը խաղաղ անցաւ, բայց ահա 1726'ի սկիզբը նոր ասպարէզ բացուեցաւ Դաւիթի առջեւ։ Օսմանեան բանակը արշաւեց Ղափանի գաւառը գրաւելու, և Հայեր մեծամասնութեամբ անձնատուր ըլլալու փութացին, Օսմանցիներու ահեղ անունին տպաւորութեան ներքեւ։ Օր մը Դաւիթ ինքզինքը միայն 17 հոգիով մնացած գտաւ, բայց շուտով 453 զինեալներ տեսաւ նա իւր շուրջը Հալիձորի մէջ, ուր ապաւինեցան եւս երեք եպիսկոպոսներ, 13 քահանաներ, և 40 հաւատաւոր կուսաններ։ Դաւիթ մտածեց մի՛ գուցէ Աստուծոյ դէմ գործ մը և ամբարտաւանութեան ձեռնարկ մը նկատուի իւր դիմադրութիւնը, ուստի աղօթքով և հաղորդութեամբ ուղեց սիրտը հանդարտել։ Նոյնը ընել տուաւ իրեն հետ եղողներուն ալ, և ահա 1726 մարտ 5'ին, Մեծպահքի 13'րդ օրը, Հալիձորի առջեւ հասաւ 70,000'ի այլազգի բանակ մը, որուն մէջ կը գտնուէին նաև Նախիջեւանի, Ագուլիսի, Ջահուկի, Զավրնդուրի և Բարկուշատի անձնատուր Հայ գունդերը, չհաշուելով ծառայութեանց և բռնակրութեանց ստիպեալ գիւղացիներու բազմութիւնները (ՉԱՄ. Գ. 793)։

*Ցիշենք որ ճիշդ այդ չփոթ միջոցին կը կատարուէր Կ-Պոլսոյ մէջ Կարապետի ընտրութիւնն ու օծումը* (§ 1944)։ *Դաւիթի իր սակաւաթիւ գունդով՝ Օսմանցիներու բանակին վրայ տարած Հալիձորի յաղթութիւնը, Մեղրիի գրաւումը, և Հալիձորի երկրորդ պատերազմը, առասպելական վէպերու կարգը պիտի անցնէին, եթէ ականատես Շահումեան չլինէր պատմողը։ Դաւիթ յարաբերութեան մտած էր Պարսից օրինաւոր թագաւոր կարծուած Թահմազի հետ, որ Դաւիթի քաջութիւնը տեսնելով, զայն ընդհանուր հրամանատար նշանակեց իր գունդերուն, և այս անգամ Դաւիթ նոր դիրքով և նոր աշխոյժով կրկին գործի ձեռնարկեց* 1727*'ին, իբր ինքնագլուխ իշխան։ Կարծես թէ Օրիի երազած Հայոց ազատագրութեան արշալոյսը կը ծագէր։ Դաւիթ յաջողութիւն ունեցաւ Մեղրիի և Օրտուպատի վրայ, Ագուլիս ալ մտաւ, բայց Հայոց դաւաճանութեամբ թողուլ պարտաւորուեցաւ, թէպէտ յաղթական նահանջով մը։ Բայց Դաւիթի նոր դիրքը ճշմարիտ յաջողութեան առհաւատչեայ չեղաւ. Պարսիկ գունդերը օգնութենէ աւելի չփոթութիւն կը բերէին։ Հայերու մէջ զօրացաւ նախանձն ու հակառակութիւնը, և շատերը գոհացուցիչ գտան Օսմանեան տիրապետութեան ներքեւ մտնելը։ Դաւիթ ալ հիւանդացաւ անտանելի աշխատութեանց երեսէն, Հալիձոր դարձաւ, և* 1728*'ին սկիզբը մեռաւ այն տեղ, նոր տարւոյն նոր գործունէութեան ձեռնարկելէ առաջ։ Այդ առ երեսս հանդարտութեան միջոցն է, ուսկից քաջալերուած Կարապետ կաթողիկոս Էջմիածին կը դառնար* (§ 1954)։

**1956**. *Դաւիթի յաջորդ նշանակուեցաւ Մխիթար, որ առաջ անոր տեղակալն ու սպարապետն էր, բայց Աւետիք Հալիձորեցի քահանային՝ պարզապէս Տէր-Աւետիք կոչուած զօրավարին նախանձը շարժուեցաւ, և ներքին գժտութեանց սերմեր բողբոջեցան Հալիձորի մէջ, որ տակաւին Օսմանեան բանակին դէմ կը դնէր։ Միւս տարին* 1729*'ին Օսմանեանք Հալիձորը պաշարեցին, և բերդապահներէն մաս մը Տէր-Աւետիքի գլխաւորութեամբ անձնատուր ըլլալու կողմն եղան, հակառակ Մխիթարի կարծիքին։ Երբոր Տէր-Աւետիք երկու ընկերով բանակցութեան գնաց, Մխիթար փախաւ. և Հալիձոր դուռերը բացաւ, բայց հակառակ եղած խոստումներու՝ կոտորածի և գերութեան մատնուեցաւ, իսկ Տէր-Աւետիք ազատ թողուեցաւ։ Մխիթար կրցաւ նորէն գունդ մը կազմել և բաւական նեղութիւն և վնաս հասցնել Օսմանեան բանակին* 1729 *տարւոյն մէջ, բայց երբ Խնձորեսքի բերդին մէջ ամրացած ձմեռնային հանդարտութիւնը կ'անցընէր, իրեն դէմ ոխացած Հայեր, հրազէնով սպաննեցին զինքը, և գլուխը կտրելով Օսմանեանց հրամանատարին ընծայ տարին մինչեւ Թավրէզ։ Այս վատ սպանութիւնը տեղի ունեցաւ* 1730 *տարւոյ սկիզբները։ Այդպէս վերջացաւ Օրիին մտածած, և Դաւիթին կազմակերպած Հայկական շարժումը, զի Մխիթարի յաջորդ չգտնուեցաւ, և Տէր-Աւետիք ալ արդէն Անկիւրիա քաշուած էր, անկէ ալ Հռոմ գացած կ'ըսուի* (ՁԱՄ. Գ. 800), *ինչպէս ամէն փորձանաւոր եկեղեցականներ, իբրեւ ապաստանի քաղաք հոն կը դիմէին։ Հռոմ ալ դաւանափոխութեան անհրաժեշտ պայմանով դիւրին պաշտպանութիւն մը կը շնորհէր հեռաւոր Արեւմուտքին մէջ։ Իսկ Մխիթարէ մնացած զինեալներ և անոնց գլխաւորներ քակտեցան ու ցրուեցան, ոմանք միւս Հայերու պէս կացութեան համակերպեցան, ուրիշներ Պարսիկ ծառայութեան մտան, ոմանք ալ Յովհաննէս Գուգարացիին մօտ գացին, զոր շարժումին սկիզբը յիշեցինք* (§ 1941), *և որ տակաւին ամփոփ և խոհական կերպով իր դիրքը կը պահէր, առանց արկածալից գործերու ձեռնարկելու։ Ղափանի շարժումին ջնջուելուն հետ Շիրվանի շարժումն ալ կը վերջանար։ Շիրվանի հայ գունդն ալ* 1726*'ին յաջողեր էր նահանջի ստիպել Ղարաբաղ արշաւող Օսմանեան գունդը, բայց ասիկայ Եսայի կաթողիկոս-զօրավարին վերջին գործը կ'ըլլար։ Օսմանցիներուն հետ համաձայնելով՝ Ռուսներուն ետ քաշուիլը, և վրայ հասնող Պետրոս Մեծին մահը, յուսաբեկ ըրին Շիրվանի շարժումին գլուխները* (§ 1932), *որոնք* 1725 *մարտ* 10*'ին տակաւին Պետրոս ձարին կը դիմէին, անոր*

ՇԱՐԺՈՒՄԻՆ ՎԵՐՋԸ

մահը լսած չըլլալով (ԵԶՆ. 418)։ Եսայի հիասթափուած և յուսախաբուած ապարէկէ քաշուեցաւ, և այլեւս իր անունը գործի վրայ չլսուիր՝ թէպէտեւ կը յիշուին Ռուս պաշտօնատարներու բրած դիմումները (ԵԶՆ. 432), որոնք չյաջողեցան մինչեւ իր մահը 1728'ին, նոյն այն տարին որ Դուլիթ ալ մեռաւ։ Աւան Կարապետեան Ղարաբաղցի մելիքը գլուխ կեցաւ՝ տակաւին չարժուած հետեւող գլխաւորներուն, որոնք իւզբաշիներ կը կոչուէին. բայց բոլոր իր գործունէութիւնը Ռուսներէն օգնութիւն ստանալու ջանքին մէջ ամփոփուեցաւ, որուն բանագնացն էր իր եղբայր Թարխան մելիքը։ Սակայն Պետրոս Մեծի յաջորդները, Կատարինէ Ա կայսրուհին 1725'ին, և Պետրոս Բ մանկահասակ կայսրը 1727'ին, անոր ոչ հոգին ունէին և ոչ ձիրքերը, որով անլսելի մնացին Հայերուն փափաքները ու առաջարկները, որոնք երկու տարի ետքն ալ 1730 մարտ 30'ին կը յայտարարէին, թէ 30,000 զինեալ Հայեր ցրուելու պատրաստուած են, բայց պատրաստ են նորէն զինուիլ՝ եթէ Ռուսական բանակ մը առջեւնին անցնի (ԵԶՆ. 447)։ Ղարաբաղի այդ կոռվի Հայերուն առաջարկուած ամենամեծ օգնութիւնը, իրենց բնագաւառէն գաղթելն էր, որուն սակայն քիչեր համաձայնեցան։ Գլխաւորներէն քանիներ, ինչպէս Պետրոս Սարգիսեան և Եղիազար Խաչատուրեան Ռուսական բանակին ծառայութեան մտան, Հայ հեծեալներու յատուկ վաշտին մէջ, և վերջինս զօրավարի աստիճանի ալ բարձրացաւ Լազար Խրիստոֆորով անունով, Ռուսահայ զօրապետներու անդրանիկը (ԼէՕ. 397)։ Աւան մելիքն ալ նոյն ճանպուն հետեւեցաւ հինգ ընկերներով, և Իվան Կարապետով գնդապետ եղաւ, որով 1730 թուականը Ղարաբաղի մէջ ալ հայկական շարժումին վերջանալը եղաւ (ԼէՕ. 399), ինչպէս եղած էր Ղափանի մէջ Մխիթարի սպանութեամբը։ Այդ ամփոփ տեղեկութիւնները հարկ՝ սեպեցինք քաղել, քանի որ ազգային եկեղեցւոյ պատմութեան տեսակէտէն միշտ անհրաժեշտ է աչքի առջեւ ունենալ Հայութեան ազգային կացութիւնը։ Վերջին դէպքերը տեղի ունեցան Կարապետ կաթողիկոսի մահուանէն ետքը Մայրաթոռոյ պարապութեան միջոցին։

**1957.** Կարապետի յաջորդին չանցած, պէտք կը սեպենք միւս աթոռներու մէջ կատարուած եղելութիւնները քաղել՝ ժամանակակից յարաբերութիւնները զուգընթաց յառաջացնելու համար։

ԿՊՈԼՍՈՅ ԳՈՐԾԵՐ

Կոստանդնուպոլսոյ աթոռին գործերուն մէկ մասը Կոլոտի շինարար ձեռնարկներուն կը պատկանին, մնացածները կաթոլիկամիտ ձգտումներէ յառաջ եկած շփոթներու չարունակութիւններն են։ Իբրեւ շինարար ձեռնարկներ ունինք Իսկիւտարի Ս. Կարապետ եկեղեցւոյն վերաշինութիւնը 1726'ին, անոր մերձաւոր Երուսաղէմի հոգետունին նորոգութեան հետ. Խասքէօյի Ս. Ստեփանոս եկեղեցւոյն շինութիւնը 1729'ին, և վերջապէս Գալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցւոյն ձեռնարկը, որ 1729 յուլիս 16'ի մեծ հրդեհին այրած էր, Յոյներու 13 եկեղեցիներուն հետ (ԿՈԼ. 30)։ Իսկ կաթոլիկական խնդիրը, որ պահ մը թուլցած էր, Լատին եպիսկոպոսին հետ կազմուած համերաշխութեան վրայ, կրկին արթարթեցաւ, երբոր կաթողիկոս և պատրիարք յանձն չառին այն նոր պայմանները, որք Հռոմէ առաջարկուեցան վասն միութեան (§ 1933)։ Լատին եպիսկոպոսը, որ նախապէս հաւանած էր իրեն հետեւողներուն Հայոց եկեղեցին երթալուն, և ինքն ալ անձամբ գացած և աղօթած էր, կրկին սկսաւ միտքերը պղտորել և նոր հրամաններ արձակել, որով որք գոյին յեկեղեցիս Հայոց, որքերեալ եղեն ի հրամանէ Լատին եպիսկոպոսին (ՉԱՄ. Գ. 804)։ Ասով անգամ մըն ալ կը հաստատուի, նոյնիսկ հռոմէականներու վկայութեամբ, թէ Լատիններու անձնահաճ կարգադրութիւնը, և առջի օրը օրինաւոր սեպուածը երկրորդ օրը ապօրէն հռչակելը, պատճառ է միամիտ ժողովուրդին մէջ սերմանուած պժտութիւններուն և մշակուած հակառակութիւններուն։ Հռոմէականաց վկայութեամբ կը հաստատուի նաեւ, թէ չեն օրէն երկոքին կողմանք մտանել ընդմիմեանս յատեան այլազգեաց, և ուրանել զերեցս ի մեծամեծ տօնսն (ՉԱՄ. Գ. 804)։ Այս ալ կը ստուգէ թէ կաթոլիկամիտներուն կողմէ հայադաւաններու դէմ քսութիւններ ու զրպարտութիւն-

ներ եղած են, որոնց համար չէին կրնար պետական հրամանի արդարացումը յառաջ բերել։ Մինչ միւս կողմէն Հայոց պատրիարքին վրայ կը ծանրանար պետական ստիպումը, թէ Նայեաց ի ծովեզերս նո, զի ամենեքին հզօրք լեցին նեղ, և զու Անդունդեալս յղեալ առ ի (ՁԱՄ. Գ. 807)։ Այս ալ վկայողը նոյն ինքն իրենցմէ է։

**1958.** Երուսաղէմի աթոռին վրայ Շղթայակիր իւր գործունէութիւնը առջեւ կը տանէր, երբոր Կ-Պոլսոյ մէջ եպիսկոպոսական ձեռնադրութիւններ կը կատարուէին (§ 1948), և Երուսաղէմի կանոնադրութիւնները կը հաստատուէին (§ 1950)։ Շղթայակիրը տակաւին վիզին վրայ կը կրէր այն երկաթեայ անուրը, զոր 1718'ին անցուցած էր Երուսաղէմի ֆերերուբրա կացութիւնը չօշափելի կերպով պատկերացնելու համար (§ 1926)։ Ութն տարիներ անցեր էին այն օրէն, և Կոստանդնուպոլսոյ մէջ Երուսաղէմի ազատութիւնը կը հռչակուէր Հաննայի բերած նպաստաւոր տեղեկութիւններով, և Երուսաղէմի ապադան ապահովող կանոններով։ Այլեւս անուրը իւր նշանակութիւնը չունէր, և ի զուր Շղթայակիրը տաղեալ և տրտմեալ վասն երկրորդ զոր ի պարանոցի խորամ կերէր (ՀՆՆ. 154), և այս մասին հարկաւ Հաննա ալ սրտաճմլիկ տեղեկութիւններ տուած էր։ Ասոր վրայ ուրբաթէն կիրակէն և մեծապահոց պատրէարքն որոշեցին Գրիգորը ստիպել երկաթը վիզէն հանելու, վասն որոյ զնամով ի ծովեզերս քերեցին նմա, հանդերձ ամենայն ծովեզերօք, և բազմաջան աղերսանօք աղաչեցին, զի հանցէ զերկաթն ի պարանոցէն իւրմէ։ Զմոռցան այդ առթիւ յատուկ նուիրատուութիւն մըն ալ յղել Երուսաղէմ, և նամակին հետ եդին արդէնասար զինուորէն, և յայտարարեցին թէ քանի որ պարտքերը կը ջնջուին և աթոռը կը չքեղազարդուի, այլեւս ոչ է ճահ զի ուրբաթն այն՝ ի մէջ այն երկաթեայ անդրայն կուրծեցի (ՀՆՆ. 155)։ Նամակն ու նպաստը սովորաբար Հաննայի դրութեամբ Երուսաղէմ ղրկուած կ'ըսուի (ԱՍՏ. Բ. 10), սակայն մեր տեսութեամբ յարմարագոյն է Հաննայի ձեռօք տարուած ըսել, երբ Երուսաղէմ կը դառնար (§ 1951), և կարծես թէ ինքն Հաննա ալ իբր եղելութեան ներկայ և ականատես մը կը գրէ, թէ Շղթայակիրը ժնվ եդեալ զինքն ալջուանի, թաղեալ արդարու եհան զերկաթն ի պարանոցէ իւրմէ (ՀՆՆ. 155)։ Հարկաւ հանելու գործողութիւնն ալ նոր նեղութեան մը պատճառ եղած պիտի ըլլայ, ազնիւ ամբողջական փակուած, և ութը տարիէ իվեր քրտինքներով ժանգոտած օղակը բանալու և վերցնելու համար, զոր ամփոփեալ ընդ Աստուած անցուցած էր ու հանել ի պարանոցէն իւրմէ (ՀՆՆ. 145), և անշուշտ կատարեալ խղճմտութեամբ անշարժ պահած էր մինչեւ վերջին օրը։ Գրիգոր Շղթայակիր՝ երբ կաթողիկոսին և պատրիարքին և ժողովուրդին նամակին կը համակերպէր, գիր մըն ալ կը գրէր զի զորհանել մինեցէ։ Իսկ անցելոյն յիշատակն ալ յաւերժացնելու համար, Սուրբ Մինա անունով սեղան մը կը կանգնէր Սուրբ Էջմիածին փոքրիկ եկեղեցւոյն մէջ, ի յիշատակ օծեալ աղբեր Հայոց (ՀՆՆ. 156), և վիզին կրած անուրը կը զետեղէր ի սեղան նորա (ԱՍՏ. Բ. 10)։ Շղթայակիրին անուրը օղակաւոր շղթայ մըն է եղած, բաւական ծանր, զոր ամրացուցած է վիզին չուրջը, և ետքէն դրած Սուրբ Մինա սեղանին ներքեւ եղած սիւնակին։ Այնտեղ մնացած է մինչեւ վերջին դարուն կէսերը, և այժմ իբր թանկարժէք առարկայ մը կը պահուի Ս. Յակոբեանց տաճարին գանձարանը։

**1959.** Շղթայակիրին նորանոր ձեռնարկներէն յիշատակութեան արժանի են Ս. Յակոբայ եկեղեցւոյն նորոգութիւնը, որուն հրամանագիրը Կոլոտ պատրիարք 1727'ին ստացաւ,

ՄՈՒԱԶԱՏԻԿԻ ԽՆԴԻՐ

և Շղթայակիրին ղրկեց Սեղբեստրոս Երեւանեանց Ակնեցի իշխանին հետ, որ հրովարտակին ստացութեան ալ աշխատած էր (ՀՆՆ. 161), իբր թարգման Անգղիոյ դեսպանատան և իբր դուշմաններէն եպարքոսութեան (ԱՍՏ. Բ. 13)։ Սեղբեստրոս, որ եւ Սեզբոս ամիրա, նոյնչափ բարեպաշտ որչափ մեծահարուստ, մեծամեծ բարերարութիւններ կատարեց Երուսաղէմի մէջ, ուր իբրեւ երկու տարի մնաց և միշտ յօգուտ աթոռին աշխատեցաւ։ Ս. Փրկիչ վանքին ջուրի խնդիրն ալ մեծամեծ նեղութեանց պատճառ կ'ըլլար Հայերուն, որուն համար Գրիգոր

պատրիարք չատ աշխատեցաւ, և արքունական հրաման ալ հանել տուաւ Կոլոտի ձեռքով, որով պահ մը կացութիւնը մեղմացաւ (ԱՏՑ. Բ. 15)։ Ծռագատիկի տարբերութիւնը 1729ին ալ տեղի պիտի ունենար, և կանուխէն սկսան Հայերուն և Յոյներուն բանակռիւները, որոնք նորէն ձախող արկածներ գուշակել կու տային։ Շրջթայակիրը ժամանակին բանակցութեան մըտաւ Յոյներուն փոխանորդ Մելետիոսի հետ, զի Քրիսանթոս պատրիարք Ուլահաց երկիրը կը գտնուէր։ Գրիգոր առաջարկեց կանուխէն կերպ մը մտածել որ Հայերուն և Յոյներուն չփումները արգելուին զատկին առթիւ, և այս նպատակով յարմար դատեց, որ Յոյներուն զատկին Հայեր; և Հայերուն զատկին Յոյներ Ս. Յարութեան տաճարը մտնելէ արգելուին։ Առաջարկը ընդունելի դատուեցաւ, Քրիսանթոս պատրիարք ալ 1728 նոյեմբեր 8ին Պուքրէշէ գրած նամակովը հաւանութիւն յայտնեց Կոլոտին (ԱՏՑ. Բ. 18), որուն դիմում եղած էր բանակցութիւնները լրացնելու Յոյներուն հետ, և Կ-Պոլսոյ պատրիարք Պայիսիոսի հետ ալ համաձայնութիւն հաստատել։ Ասոնց ալ հաւանութեամբ առաջարկը պետական հաստատութեան ենթարկուեցաւ, և Կ-Պոլսէ յատուկ պետական պաշտօնեայ ալ ղրկուեցաւ Երուսաղէմ, գործադրութեան հսկելու համար։ Այս նախահոգ զգուշութեանց շնորհիւ 1729 ապրիլ 6ին Յունաց, և ապրիլ 13ին Հայոց զատիկները, նախընթաց Ջարչարանաց օրերն ու Ճրագալոյցի լուսահանութիւնը խաղաղ կատարուեցան և չեղև ինչ վէճ կամ խռովութիւն (ԱՏՑ. Բ. 24)։ Ուստի անհիմն զրոյցի արձագանգ է ոմանց գրելը, թէ եղեն մեծամեծ աղմուկ, և սպանան երկու ի Հայոց, և երկու եւս ի Յունաց (ՋԱՄ. Գ. 804)։ Ամէն բան աւարտելէն ետքը, ուխտաւորութենէ դարձող Յոյներու թելադրութեամբ վէճեր տեղի ունեցած են Կ-Պոլսոյ մէջ, և Հայերու դէմ ամբաստանութիւններ եղած, և կառավարութեան միջամտութիւնը հրաւիրուած, և Կեսարիոյ մէջ գրգռութիւններ յուզուած, և շրջակայ քաղաքները տարածուած։ Բայց Կոլոտի միջամտութեամբ և կառավարութենէ առացած հրովարտակներով խնդիրները փակուեցան, և Հայեր ու Յոյներ սկսան նորէն վարիլ սիրով և խաղաղութեամբ ընդ մեզանէ (ԱՏՑ. Բ. 28)։ Շղթայակիրը իր գիրերով և յորդորներով նպաստած է միջադէպին լուծուելուն, որ Երուսաղէմի մէջ մեծ ազդեցութիւն չունեցաւ, զի եղելութիւններ հոն յայտնի էին։ Շղթայակիրը Լատիններու հետ ալ վէճեր ունեցաւ Պատանատեղւոյն և Իւղաբերից սեղանին կիրառութեան և զարդերուն պատճառով, բայց յաջողեցաւ դատաստանով հաստատել տալ Հայոց իրաւունքները, և նորոգել ակիփականութեանց և ստացութեանց վաւերագիրները (ԱՏՑ. Բ. 29)։ Այս խնդիրներն ալ տեղի ունեցան 1730ին։

**1960.** Կիլիկիոյ աթոռը մտադրութեան արժանի եղելութիւններ չներկայելուն, բաւական ատեն. է, որ մեր տեսութենէն վրիպեցաւ։

ԿԻԼԻԿԻՈՅ ԱԹՈՌ

Վերջին անգամ յիշեցինք Մատթէոս Սարիի կաթողիկոսանալը (§ 1829), որ եօթը տարի աթոռը գրաւելէ ետքը լքած և Կ-Պոլիս եկած էր 1701ին, զի Պետրոս Բերիացի կրցեր էր Բերիոյ մէջ Դաւիթ և Ազարիա Կարկառեցիներուն կազմած հակաթոռութիւնը վերանորոգել, և Մատթէոս Սսոյ մէջ մասնակի կաթողիկոսութիւն վարելէ աւելի, հակաթոռը ընկճելու համար Կ-Պոլիս էր եկած (§ 1856)։ Հոն նորանոր ձգտումներ յղացաւ և Կիլիկիան մոռցաւ, թէպէտեւ յաջողութիւն չգտաւ, և մինչեւ ուրացութեան ստիպուեցաւ (§ 1887)։ Պետրոս Բերիացին, որ Պիծակ ալ կոչուած է, պահ մը ինքզինքը Կիլիկիոյ կաթողիկոս կարծեց Մատթէոսի հեռանալովը և Սսոյ աթոռին անտէրունջ մնալովը, սակայն երբոր Մատթէոսի բացակայութիւնը երկարեցաւ և դառնալուն յոյսը կտրուեցաւ, Սսոյ միաբանք և ժողովուրդք նոր կաթողիկոսի ընտրութեան ձեռնարկեցին, և 1705ին Կիլիկիոյ օրինաւոր կաթողիկոս հռչակուեցաւ Յովհաննէս Հաճընցի, և Պետրոսի հակաթոռութիւնը աւելի չեշտուեցաւ, միայն թէ նա չյաջողեցաւ Բերիոյ մէջ պաշտօնավարել։ Յովհաննէս զայն չկրցաւ ընկճել և անուղղակի կերպով վերանորոգուեցաւ Խաչատուր Սեբաստացիի և Դաւիթ Կարկառեցիի ժամանակ տեղի ունեցած բաժանումը (§ 1753)։ Որոշ չէ թէ

*որչափ ատեն ևս շարունակեց Պետրոս Բերիոյ աթոռին վրայ. մենք յիշեցինք որ* 1708'*ին Մելքոն Թասպասեանին* (ԱՂԹ. Գ. 11), *և* 1710'*ին Աբրահամ Արծրունեանին* (ԱՂԹ. Գ. 57) *եպիսկոպոսական աստիճան տուաւ, և ոմանք մինչև* 1712 *կը յերկարաձգեն անոր ատենը, Բերիոյ հակաթոռ կաթողիկոսութեան մէջ* (ԱՂԹ. Գ. 11)։ *Իսկ ուրիշներ կը բաւականան անոր մահը յիշելով* 1728'*ին Երուսաղէմի մէջ* (09 ՕՐԱ. 234), *որ կը ցուցնէ թէ Յովհաննէս յաջողեցաւ զայն Բերիայէ հեռացնել։ Նաև եթէ կաթոլիկ, կամ լաւ ևս կաթոլիկամիտ մըն ալ եղաւ երբեմն, ինչպէս հռոմէականք կը սիրեն պնդել, վերջէն իւր հայադաւանութեան մէջ հաստատուած, և այնպէս մեռած կ'ըլլայ Երուսաղէմի վանքը, ուր հռոմէականութիւն չկրցաւ մուտ գտնել, և ուր միշտ վառ էին Լատիններու հետ մրցումն ու հակառակութիւնք։ Յովհաննէս Հաճընցին իւր աթոռը պահեց մինչև իւր մահը* 1721 *դեկտեմբեր* (ՍԻՍ. 217), *և կեղակարծ կը դառնայ ոմանց՝ Հաճընցին գահընկէց եղած կարծելը* (ԴԻԹ. 54)։ *Անոր անմիջապէս յաջորդեց Սսոյ մէջ Գրիգոր Կեսարացին, մականուանեալ Ուղուրլու, որուն* 1727'*ին կը յաջորդէ Յովհաննէս դարձեալ Հաճընցի, Տէր-Ադամ մականուանեալ, որ մինչև* 1731 *առանձինն կը պահէ աթոռը, և անկէ ետքը իրեն աթոռակից մը կ'առնէ։ Այս վերջին կաթողիկոսներու թուականները տարբեր կերպով նշանակողներ ալ կան, և Յովհաննէս Հաճընցին* 1719'*ին, Գրիգոր Կեսարացին* 1727'*ին և Յովհաննէս Տէր-Ադամը* 1730'*ին պաշտօնի անցած կը ցուցնեն* (ՍԻՍ. 219), *բայց նախադասելի պիտի համարուի Կիլիկեան աղբիւրներու վրայ վերջին ատեններ կազմուած ցուցակը* (09 ՕՐԱ. 234)։ *Մանաւանդ որ Կեսարացին* 1727'*ին աթոռ բարձրացած ըսողն ալ, նախապէս յառաջ բերած է Հաճընցիին տապանագիրը, որուն մէջ* 1721 *դեկտեմբերին կը դրուի անոր մահը* (ՍԻՍ. 217)։ *Սսոյ մասին ուրիշ պատմական տեղեկութեանց պակսած ատեն, պիտի գոհանանք լոկ յաջորդութեանց կարգը յառաջ բերելով։*

ԱՂԹԱՄԱՐԻ ԱԹՈՌ

**1961**. *Աւելի նուազ են Աղթամարի կաթողիկոսութեան պատկանող լուրերը, և նոյնիսկ Հաւաքարանն ալ, որ անստոյգ բաներ ալ արձանագրելէ չքաշուիր, անուններէ աւելի բան մը յառաջ չբերեր։ Վերջին անգամ յիշեցինք Թովմաս Հերիճցին, որ Եղիազարի հպատակելէն ետքը՝ Նահապետին դէմ էր ելած, և անկէ ձեռնադրուած Աւետիսը մերժած, և իւր կենդանութեան Սահակ Արծկեցին յաջորդ օծած, որ Պարոնտէր ալ կոչուած է* (§ 1828)։ *Իրօք ալ Սահակ յաջորդութեան անցաւ երբ Թովմաս վախճանեցաւ* 1698'*ին, և Աւետիսի ճիգերը օգուտ չունեցան։ Սահակ հազիւ թէ տարին բոլորեց, զի* 1699'*էն իբրև կաթողիկոս կը յիշատակուի Յովհաննէս Կայծակ, կամ տեղական հնչմամբ Կէծուկ, և անոր ալ* 1705'*ին կը յաջորդէ Հայրապետ Փայխեցի, Թովմասի քեռորդին, այրի երիցութենէ չուշտակ վարդապետութեան անցած։ Հայրապետէ ետքը թուականներու յիշատակներն ալ կը պակսին, և Հաւաքարանը կը շատանայ լոկ անուններու ցանկ մը տալով, որք են Յովհաննէս Հայոցձորեցի, Գրիգոր Գուաշեցի, Ղազար Մոկացի՝ Առաքինի կոչուած, Գրիգոր Խիզանցի՝ Ազնուազարմ ըսուած, և Պաղտասար Բաղիշեցի, որուն մահն ալ կը դնէ* 1730'*ին* (00 ԲԻՋ. 1198), *սակայն ուրիշներ կեանքը մինչև* 1736 *կ'երկարեն, և մինչև* 1743 *յիշատակութիւններ տեսած են* (09 ՕՐԱ. 287), *որոնք մեզի ծանօթ չլինելուն բաղդատելու և ըստուգելու միջոցը չունինք։ Աղթամարի կաթողիկոսներուն տաճկահպատակ սահմանին մէջ գտնուիլը, և Թովմասի օրէն արծարծուած Էջմիածինի դէմ հակառակութեան հոգին, դիւրութիւն կու տային անոնց, իրենց ազդեցութիւնը տարածել Վասպուրականի և Աղձնիքի մէջ գտնուող վիճակներու վրայ, միշտ շարժուն ու ծփուն կացութեան մէջ, որով շարունակ փոփոխական կը դառնար Աղթամարի աթոռին իրաւասութեան սահմանը։ Օսմանեան մայրաքաղաքի հեռաւորութիւնն ու յարաբերութեանց դժուարութիւնը՝ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան հետ ալ առնչութեան արգելք կ'ըլլային, այնպէս որ ոչ մի յիշատակ և ոչ մի դիպուած չենք գտներ, որ Կ-Պոլսոյ պատրիարքները Աղթամարով զբաղած ըլլան, մինչ շարունակ շփման մէջ էին Կիլի-*

կիոյ հետ։ Այսպէս Աղթամար կղզիացեալ և մոռացեալ կացութիւն մը ունէր, և իւր իրաւասութեան գաւառներն ալ ոչ մի նպաստաւոր հանգամանք չներկայելուն, աթոռն ալ չարունակեալ անկման ճանպուն մէջ կը յառաջէր։

**1963**. Այստեղ ալ, ինչպէս նախընթաց անգամներ, յիշենք այդ միջոցներուն կատարուած նահատակները, որոնք եկեղեցւոյ և հաւատոյ ոչ միայն պարծանք են, այլեւ անոր սրբութեան և ուղղութեան վկաներ։ Վերջին տարիներուն մէջ նուազ են մեզի հասած յիշատակները, այլ նուազ չենք կարծեր նահատակներուն թիւը, և ո՛ գիտէ որչափներ այդ գովելի վկայութիւնը տուին՝ Հայաստանի՝ վայրագ հրոսակներէ և անզուսպ բանակներէ ոտնակոխ եղած ժամանակները։

**ՍԱՀԱԿ ԲՐՈՒՏԵՑԻ**

Սահակ, 17 տարեկան պատանի մը, բնիկ Գողթն գաւառի Բրուտ գիւղէն, որ Բեհրուտ կամ Բեխրուտ ալ կը գրուի (ՍԻՍ. 345), առեւտուրի նպատակով կու գայ Ագախ քաղաքը, որ է Ագովը, Տօնի կամ նախնեաց Տանայիսի գետաբերանը, ոչ շատ հեռի այժմեան Նոր-Նախիջեւանէն։ Պատանիին գեղեցկութիւնը Թուրքերու կիրքը կը գրգռէ, և երբ չեն կրնար հրապուրել, բռնութեամբ կը մտածեն յաղթել, և սուտ վկաներով դատաւորին կ'ամբաստանեն, թէ խոստացաւ իսլամանալ, և այժմ կը դիմադրէ։ Այդ զրպարտութեամբ Սահակ 1715 հոկտեմբերի սկիզբները դատաւորին առջեւը կը հանուի, և զրպարտութիւնը մերժելուն և քրիստոնէութիւնը դաւանելուն համար կը բանտարկուի։ Երեք օր ետքը իշխանին առջեւը կը հանուի, ուր միեւնոյն հաստատամտութիւնը ցուցնելուն, նորէն կը բանտարկուի և եօթն օր անսուաղ կը թողուի, ամէն օր անհացնելու նոր միջոցներ գործածելով։ Վերջէն կը չարչարուի ալ (ՆՈՐ. 555), և առաւօտուն մեծ առեան կը կազմուի զօրավարին առջեւ, և հրապոյրներ ու ողոքանքներ ու սպառնալիքներ առատապէս կը գործածուին, և վերջապէս գլխատման վճիռը կը տրուի, և դահիճը կը տիրանայ Սահակի։ Կը մերկացնէ, և ձեռուըները ետեւ կապած գլխատման տեղը կը տանի. բայց զգածուելով և յուզուելով անգամ մը Սահակի թիկունքին, անգամ մըն ալ ուսին կը զարնէ, և վերջապէս զօրավարին հրամանով ոչխարի պէս զայն կը զենու։ Նահատակութեան օրն է 1715 հոկտեմբեր 17, Խաչի վեցերորդ երկուշաբթին։ Մարմինը կը հրամայուի Տօն գետին մէջ նետել, բայց քրիստոնեայք կը յաջողին [illegible] տալով թաղման արտօնութիւն ստանալ (ՆՈՐ. 557)։

**1963**. Սահակ Բրուտեցի նահատակէն զատ պէտք յիշենք նաեւ Սամուէլ Մանիսացին, Եղիա քահանայի որդին, որուն տապանագիրը կ'ըսէ թէ [illegible] Զմիւռնիոյ մէջ (ԹՕՍ. Ա. 89), և ուրիշ պարագայ չյիշեր։ Տապանագիրը նահատակութեան օրը կը դնէ 1723 յուլիս 15 երեքշաբթի, որ տոմարով չարդարանար, և հարկաւ կամ փորագրողին կողմէ չփոթութիւն, և կամ արտատպողին կողմէ հայկական թուատառերու մասին թիւրիմացութիւն մը մտած է, զոր դիւրութեամբ ալ ուղղել չենք կրնար, զի նմանաձեւ տառերու դիմաց ալ չենք գտնուիր։ Ուստի կը բաւականանք 1723 յուլիս 15'ը պահելով, երկուշաբթի ըսել նահատակութեան օրը, գուցէ երեքշաբթին թաղման օրը ըլլալով չփոթութեան պատճառ տուաւ։

**ՍԱՄՈՒԷԼ ՄԱՆԻՍԱՑԻ**

Սոյն միջոցին, 1730 և 1735 տարիներու մէջերը, դրած էին ոմանք Խանում Վաղարշակերտացիին վկայութիւնը (ՆՈՐ. 566), այլ ստուգագոյն աղբիւրներ 1755'ին դնելուն (ՆՈՐ. 562), ուրիշ առթի կը թողունք անոր յիշատակութիւնը։

# Տ. ԱԲՐԱՀԱՄ Բ. ԽՈՇԱԲԵՑԻ

**ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՎԻՃԱԿԸ**

**1964**. *Կարապետ կաթողիկոսի մահուան միջոցին Երեւանի նահանգին քաղաքական կացութիւնը բոլորովին հանդարտ չէր։ Իրաւ երկիրը Օսմանեան տիրապետութեան ներքեւ էր, բայց Պարսկական մրցումը դադարած չէր։ Մահմուտ, Աֆղանի յաղթականը* (§ 1930), *իւր անգութ և բռնակալ իշխանութիւնը եղերական կերպով վերջացուցած էր։ Չորս տարի արիւնուշտ թագաւորութենէ ետքը,* 1725'*ին յանկարծ խղճահարելով, խիստ ապաշխարութեան ենթարկած էր զինքը, մութ քարայրի մը մէջ անսուաղ խոշտանգանքներով, ուսկից* 15 *օր ետքը խելայեղեալ դուրս ելած էր կատաղի մոլեգնութեամբ, իւր միսերը ուտելու աստիճան։ Այնպէս որ իւր մայրն* (ՏՊԼ. 360) *և իւր եղբօրորդին էշրէֆ* (ԺՈՒ. 331), *զայն խեղդել տուած էին այդ կացութեան վերջ տալու համար։ Այսպէս* 1725 *ապրիլին էշրէֆ թագաւորութեան տիրացած էր Ասպահանի մէջ, մինչ Թահմազ գաւառներու մէջ կը դեգերէր. իսկ Ռուսեր ու Օսմանցիներ Պարսիկ գաւառները իրենց մէջ բաժնելու կ'աշխատէին* (§ 1932)։ *Թահմազ և էշրէֆ հաւասարապէս հետամուտ էին Օսմանցոց պաշտպանութիւնը ապահովել իրենց գաւառներուն գնովը, երբոր հրապարակի վրայ երեւցաւ նոր անձնաւորութիւն մը, Նատիր՝ Թիւրքմէններու Աֆշար ցեղէն, ստորին դասակարգի զաւակ, որ բախտին բերմամբ ալեկոծ կեանք մը, և բարձրացումներ ու անկումներ ունենալէ ետքը, աւազակապետ մը եղած և ամենուն վրայ ահուսարսափ թողած, և անպարտելի մարդ մը ճանչցուած էր* (ՏՊԼ. 361)։ *Նատիր Թահմազի կողմը անցած էր* 1726'*ին, երբոր սա Խորասան գաւառը կը դեգերէր։ Աֆղաններուն դէմ ելլելով, ընկճած էր անոնց ոյժը, էշրէֆն ալ Ասպահանէ փախուցած, և Թահմազը յաղթանակով իւր հօրը մայրաքաղաքը դարձուցած, և անոր իշխանութիւնը ապահովցուցած էր էշրէֆը սպաննելով, և Աֆղանները կոտորելով և ցրուելով* (ԺՈՒ. 332)։ *Այդ պատերազմները բաւական երկար տեւեցին, և երբ Նատիր Աֆղանները կը հալածէր, Թահմազ ուրախ օրեր կ'անցընէր Ասպահանի մէջ։ Իսկ սահմանագլուխները կը մնային միեւնոյն դիրքի մէջ, թէեւ երկու կողմէն ալ խլրտումներ անպակաս էին։ Ճիշդ այդ միջոցին կ'իյնար Կարապետի մահը* (§ 1954), *երբ կը շարունակէր Օսմանեան տիրապետութիւնը Երեւանի և Էջմիածինի վրայ։*

**ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ**

**1965**. *Այս պատճառով նոր կաթողիկոսի ընտրութիւնը Օսմանեան հովանաւորութեան ներքեւ կատարուեցաւ, բայց ոչեւս Կ-Պոլսոյ մէջ, ինչպէս եղած էր Կարապետի ընտրութիւնը* (§ 1944), *այլ նոյնինքն Մայրաթոռի մէջ, ուր տարիներէ իվեր Օսմանեան կառավարութիւնը մնայուն վիճակ ստացած էր։ Չէ ըսուած թէ ինչ ազդեցութիւններ և ինչ թելադրութիւններ առաջնորդեցին ընտրութեան, բայց ընտրեալին վրայ դարձնելով դիտողութիւննիս, դիւրաւ կը կարծենք պարզել այդ կէտը։ Ընտրեալն է Աբրահամ եպիսկոպոս, Մշոյ Ս. Կարապետ վանքին առաջնորդը, որուն այդ պաշտօնը յանձնած էր Գրիգոր Շղթայակիրը՝ անկէ հեռանալուն առեն* (§ 1924)։ *Աբրահամ Գրիգորի եղբօրորդին և աշակերտն էր* (ԱՍՏ. Բ. 104), *կամ աւելի ճշդութեամբ՝ աշակերտակիցն էր, ուստի կամ Կոլոտ և Շղթայակիր թելադրեցին անոր անունը, և կամ Մայրաթոռի ընտրողները մտածեցին Կոլոտի և Շղթայակիրի համակիր և սիրելի անձ մը յառաջ կոչել. բայց միշտ յայտնի կ'երեւի թէ Կ-Պոլսոյ և Երուսաղէմի պատրիարքներուն համամիտ ազդեցութիւնը տիրեց Աբրահամի ընտրութեան մէջ։ Աբրահամ բնիկ Խոշաբեցի ըսուած է, Վանայ հարաւակողմը Հայոցձորի սահմանակից գաւառին աւանէն, և գիտենք թէ Շղթայակիրն ալ Շիրուանցի էր։ Աբրա-*

համ ալ կը պատկանէր՝ Վարդանի մահուանէ ետքը Ամրաոլէ Գլակ փոխադրուող միաբաններուն, ինքն ալ աշխատած էր Ս. Կարապետի համար, նուիրակութեան ելած էր (§ 1910), և Շղթայակիրէ ու Կոլոտէ ետքը՝ Վարդանի ընտրելագոյն հետեւողներէն նըկատուած էր, և Գլակայ առաջնորդութեան կոչուած էր։ Նա կը նկարագրուի իբր «այր առատաձեռն և ծննդասէր, հեզ և քաղցրաբարոյ, ողորմած և փափկասուն» (ՋԱՄ. 29)։ Իրրեւ գործունէութիւն ալ օգտակար եղած էր Գլակի, օգտակար ալ եղաւ Էջմիածինի։ Միայն թէ տարիքը առած էր, և երկար պաշտօնավարութիւն չունեցաւ. պարագաները ալ չէին ներեր մեծամեծ ձեռնարկներու սկսիլ. բաւական էր որ խաղաղ վիճակ մը կարենար պահել, և չէն պահպանել Մայրաթոռը, ինչ որ իրօք ըրած է Երեւանեցիին վկայութեամբ (ՋԱՄ. 30)։ Աբրահամի կաթողիկոսութիւնը կը դրուի 1730'ին, Կարապետի մահուընէ քանի մը ամիս ետքը, սակայն թէ ընտրութեան և թէ Էջմիածին համնելուն և օծուելուն ամսաթիւերը գըրուած չեն։ Նկատելով որ խոր ձմեռուան մէջ դիւրին չէր Մուշէ Էջմիածին ուղեւորիլ, հաւանական կը դատենք օծումը դնել 1730 մարտին, զատկին մօտերը, որ այն տարի մարտ 29'ին կ'իյնար։ Այս հաշիւը կ'արդարանայ Աբրահամու կաթողիկոսութեան 4 տարի և իբր 9 ամիս տեւողութիւն նշանակուելէն մինչեւ իր մահը 1734 նոյեմբեր 11'ին (ՇԱՀ. Ա. 226)։ Աբրահամ անխտիր կը կոչուի Խոշաբեցի՝ ծննդավայր գիւղէն, Բիւրտիկանցի՝ գաւառին կոչումէն (ՋԱՄ. Դ. 805), և Մշեցի՝ իր առաջնորդական վիճակէն (ՋԱՄ. 29), բայց նախադասելի է ծննդավայրէն մականուանել։ Շատ քիչ տեղեկութիւն ունինք իր գործունէութեան վրայ, հետեւաբար պիտի գոհանանք ժամանակակից դէպքերը յառաջ բերելով։

**ՆԱՏԻՐԻ ԵՐԵՒՆԱԼԸ**

**1966**. Այն միջոցին երբ տակաւին Նատիր Պարսկաստանի արեւելակողմը Աֆղաններու և ուրիշ ապստամբ ցեղերու դէմ պատերազմելու զբաղած էր (§ 1964), Թահմազ պատգամ ղրկեց Օսմանցոց, որ Պարսկաստանէ գրաւած գաւառները ետ դարձնեն։ Սուլտան Ահմէտ Գ և եպարքոս Տամատ Իպրահիմ փաշա բանակցութեանց մտնելու կը միտէին, երբ ժողովրդական յուզումը պատերազմ կը պահանջէր անպատճառ։ Եպարքոսը ճանպայ ելաւ, այսինքն Իւսկիւտար անցաւ 1730 օգոստոս 3'ին, և կը սպասէր որ սուլտանն ալ հետեւէր, բայց նա կը դանդաղէր, և այս պատճառով սեպտեմբեր 28'ին, Եէնիչէրիներու ապստամբութիւնը սկսաւ՝ Բաթրօնա-Խալիլ պարզ սպայի մը գլխաւորութեամբ (ԺՈԻ. 332), և գործը մինչեւ եպարքոսին սպանութիւնը և կայսեր գահընկէցութիւնը յառաջացաւ. Ահմէտ Գ բանտարկուեցաւ, և եղբօրորդին Մահմուտ Ա գահ բարձրացաւ։ Անմիջապէս Պարսից դէմ պատերազմը հրուչակուեցաւ, չորս սպարապետներ չորս կողմէն յարձակեցան։ Թահմազ որ անձնապէս գրգռած էր այդ պատերազմը, չարաչար յաղթուեցաւ, և 1732 յունուար 10'ին, հաշտութիւն ստորագրեց, որով Օսմանցիներ աւելի եւս կ'ընդարձակէին իրենց պետութիւնը (ԺՈԻ. 336)։ Նատիր՝ Աֆղաններու դէմ յաղթութենէն դառնալով, և Թահմազի ինքնագլուխ պատերազմի ելլելուն և յաղթուելուն զայրացած, Ասպահանի մէջ Թահմազը գահընկէց հռչակեց, և Խորասան աքսորեց իբր բանտարկեալ, և Թահմազի ութն ամսու որդին կայսր հռչակեց Աբաս Գ անունով, և իր խնամակալութեան ներքեւ (ՏՊԿ. 362), կամ աւելի ճիշդ իշխանութիւնը ձեռք առաւ։ Նատիր, որչափ ալ Թահմազը մերժեց, բայց պահեց Թահմազ-Ղուլի անունը, որ է Թահմազի ծառայ, զոր իբր պատիւ իր վրան առած էր՝ Թահմազի պաշտպանութեան ելած ատենը։ Նատիր պատերազմ հռչակեց Օսմանցիներու դէմ, և առաջ դէպի Պաղտատի կողմերը արշաւեց, 1733 յուլիս 19'ին Տուլճէյլիքի ճակատամարտը կորսնցուց (ԺՈԻ. 338), բայց երեք ամիսէն վրէժը լուծեց։ Պաղտատի կողմէն Օսմանցոց արշաւանքը կասեցուց, և Երասխի կողմերը դառնալով հետզհետէ հին Պարսկական գաւառներու սկսաւ տիրանալ։ Բնական էր որ այդ պատահարներ պիտի դառնացնէին Աբրահամ կաթողիկոսի վերջին օրերը, գի 1734'ին Հայաստանի մէջ տեղի կ'ունենային պատերազմի արհաւիրքները, որոնք մինչեւ յաջորդ 1735 տարին շարունակեցին։ Իսկ Աբ-

*բահամ, ինչպէս յիշեցինք* (§ 1965), 1734 *նոյեմբեր* 11'*ին կնքեց իւր կեանքը։*

**1967**. *Կոստանդնուպոլսոյ աթոռին գործերը իրենց սովորական ընթացքը կը պահէին Յովհաննէս Կոլոտի*

ՂԱԼԱԹԻՈՅ ԵԿԵՂԵՑԻՆ

*բարեջան աշխատութեանց շնորհիւ, որ տարօրինակ յաջողութեամբ, կամ լաւ եւս յաջողակութեամբ, բաւական տարիներէ իվեր անփոփոխ կը մնար պատրիարքական աթոռին վրայ։ Մայրաքաղաքին մէջ սովորական հրդեհներէն մէկն ալ Գուլաթիոյ Թաղը աւերեց 1731'ին, և Յոյներու չորս եկեղեցիներու հետ Հայոց Ս. Լուսաւորիչն ալ այրեցաւ, և պարագայից բերմամբ, ներքին և արտաքին չփոթութեանց պատճառով, դժուար եղաւ վերաշինութեան հրամանը առնալ։ Այս երեւէն Կոլոտ դէպ ի նեղութիւնս և չարչարանս կրեաց, և ոչ եղեւ հնար յաղթել* (ՀՆՆ·168)։ *Բարերախտութիւն մը եղաւ Հէքիմզատէ Ալի փաշային եպարքոսութեան բարձրանալը, որ իւր ծանօթ Սեղբեստրոս Երեւանեանցը անուանեց ծայրագոյն վաճառողէ դրամոյ որսորդական, և սա իւր ազդեցութիւնը գործածեց* (ՀՆՆ·169), *որով* 1732 *դեկտեմբեր* 15'*ին հրովարտակըստացուեցաւ* (ԿՈԼ·32)։ *Շինութիւնը ամենայն փութաջանութեամբ առաջ տարուեցաւ, այնպէս որ* 1733 *մարտ* 10'*ին, Գրիգոր Լուսաւորչին Մուտն ի վիրապին օրը, Կոլոտ ուխտաւորեալ էօծ նորաշէն եկեղեցին, որ է ըսել, երեք ամիսէ պակաս միջոցի մէջ. սակայն չենք կարծեր թէ բոլոր զարդերով լրացած ըլլայ այդ կարճ առենի մէջ, զի ճարտարապետն Սարգիս խալֆան, հրաշալի յօրինուածովք գեղեցկացուցեալ է շքեղագոյն եկեղեցին այն* (ՀՆՆ·170), *և հարկաւ զարդի աշխատութիւնները շարունակեցին եկեղեցին գործածելի ըլլալէն ետքն ալ։ Շինութեան գլխաւոր բարերարն եղաւ Սեղբեստրոս Երեւանեանցը, ազգայիններն ալ նպաստեցին ձեռաւ է յերկրոյ կողմանց* (ՁԱՄ· Գ· 805), *իմա՛ լատինամիտներն ալ մասնակցեցան։ Բայց այս մօտաւորութիւնը նորէն Լատիններուն աչքին զարկաւ, և նոր հրամաններ ու մօտաց պղտորումներ ցանուեցան Լատին եպիսկոպոսին և քարոզիչներուն կողմէն, իրենց հետեւողները Հայոց եկեղեցիներէն հեռացնելու համար։ Ասոնց սաստկացեալ համակերպութիւնը անգամ մըն ալ կառավարութեան մտադրութիւնը հրաւիրեց, որ չէր կրնար ներել օտարներու հետ մտերմութիւնը և անոնց հպատակութիւնը, ուստի փոխադարձաբար նոր զգուշութիւններ և նոր արգելքներ հրամայեց, որով օտար եկեղեցի յաճախողները ձերբակալուեցան, բայց տուգանքով թողուեցան։ Լատիններ ալ Գաղղիական դեսպանին միջամտութիւնը գրգռեցին, որ էր Լուդովիկոս Վիլնէօվ մարքիզը* (Louis-Sauveur marquis de Villeneuve). *սա ալ Գերմանական դեսպանը ընկերակից առնելով, իբր թէ իրենց տէրութիւնները անարգեալ ցուցուցին, Լատին եկեղեցիներուն դէմ դրուած արգելքով։ Կառավարութիւնը ստիպեալ հրամանները մեղմացուց, և Կոլոտ առիթ գտաւ նորէն հաշտարար միջոցները ձեռք առնելու, և Լատին եպիսկոպոսին և Գաղղիական դեսպանին դիմեց, որ իրենց կողմէ ալ Հայ եկեղեցիներու դէմ դրած արգելքնին վերցնեն։ Անոնք չկրնալով բացէբաց մերժել, երկդիմի յայտարարութիւններ ու պահանջներ հանեցին, նզովքի չարականին ծանօթ տուներուն խնդիրը բացին, որք արդէն պաշտօնապէս դադարած էին* (§ 1952), *և միայն իբր փոխադարձ հակառակութիւն ամանց կողմէն կ'երգուէին։ Այդ բանակցութիւնները թէպէտ վերջնական արդիւնք չունեցան, բայց անգամ մըն ալ մեղմացուցին մրցակից հակառակութիւնները։ Վերոյիշեալ ծանօթ տուներուն դադարումը Կարապետ Ուլնեցիի կաթողիկոսական իշխանութեամբը հրամայուած էր, և Կոլոտ Աբրահամ կաթողիկոսի ալ դիմած կ'ըսուի այդ մասին* (ՁԱՄ· Գ· 806), *թէպէտ որոշ յիշատակութիւն չենք գտներ։*

**1968**. *Երուսաղէմի գործերը թողուցինք* 1729'*ի ծուպատիկին, որ Շղթայակիրի հովանաւորութեամբ*

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ

*պածութեամբ հանդարտ անցած էր։ Ուրիշ տեղեր ծագած շփոթներուն արձագանգն ալ թեթեւ անցեր էր Երուսաղէմի մէջ* (§ 1959), *բայց Յոյներ սկսած էին նորանոր խնդիրներ յուզել, երբոր պատրիարքութեան անցաւ Մելիտոս, և փոխանորդ եղաւ Կեսարիոս, և*

կ'ուզէին Հայերը բոլոր իրաւունքներէ կապտել, և նոյնիսկ Ս. Յակոբեանց վանքը գրաւել։ Գրիգոր Շղթայակիր, որ հաշտարար միջոցներով ծագածիկի խնդիրը փակեր էր, աշխատեցաւ նոյն ձեւը գործածել։ Իրեն աջակիցն էր Հաննա վարդապետ, սակայն 1730'ին նա խօթացաւ (ԱՍՏ. Բ. 31), և Շղթայակիրն ալ ծերացած, գրեց Կ-Պոլիս, որ Կոլոտ գայ և տէր լինի աթոռին, և կամ ղրկէ իւր աշակերտներէն Յակոբ վարդապետը, որ է Յակոբ Ջիմառային, ազգատոհմին անունով Նալօղլու կամ Նալեան կոչուածը։ Այսու հանդերձ Շղթայակիր իւր աշխատութիւնը չարունակեց, և Յոյներու հետ երդմամբ և ուխտով հաշտութիւն կընքուեցաւ, սակայն այդ հօշամէդէն և երտաֆ Յօնաց, Բօզէյ էճէ էր ըսէլմայն Հայոց, ալէմէլ ըլսա է տան Բեդամէդէն և ահէմէդեան. Վասնզի միւս կողմէն Յունաց պատրիարքը կը պատրաստուէր Կ-Պոլիս երթալ և խնդիրներ յուզել, թէպէտ կը վստահացնէր Շղթայակիրը, թէ Վ' անկըզէ էօլըր տօ Բէ ֆնամ եօ կալսայ, ալը վան գորձայ էմօյ (ԱՍՏ. Բ. 34)։ Այդ միջոցին, 1732'ին, Նալեան Երուսաղէմ կու գար, և Շղթայակիրը զայն իրեն փոխանորդ նշանակելով Կ-Պոլիս կը դարձնէր, որ Երուսաղէմի շահերուն հսկէ (ԱՍՏ. Բ. 31), զի միշտ կասկածով էր Յոյներուն վրայ։ Շղթայակիրին դժբախտութենէն քիչ ետքը 1733 յունիս 11'ին կը վախճանէր Հաննա, անոր աջբազուկը, աւելի քան աջակիցը, որ չատոնց խօթացեալ և տկարացեալ էր, և կը թաղուէր Ս. Փրկիչ վանքը (ԱՍՏ. Բ. 30)։ Շղթայակիր այլայլած և չփոթած կը մնածէ պատրիարքութենէ քաշուիլ, և այդ միտքով Կ-Պոլիս ալ կը գրէ, որ իրեն յաջորդ մը հոգան։ Արդէն ևս, կ'ըսէ, է ֆալաչիլ միբադէն հասած եմ (ԱՍՏ. Բ. 31), և սխալներ ալ կը գործեմ, ինչպէս որ ըստ էօ ցասաթէլ եւ վան հօշամէդեանօ ըրը արալէ ըստ Յոյնօ (ԱՍՏ. Բ. 32), իբր զի Յոյն պատրիարքը արդէն Կ-Պոլիս հասած, և Հայերու դէմ խնդիրներ յուզել սկսած էր։ Բայց Կոլոտ ուժգնակի զինադրեց Յոյներու նենգութիւններուն, և օգտուելով Հէքիմզատէ Ալի փաշայի ուղղութենէն և խոհականութենէն (ԺՈՒ. 339), յաջողութիւն ունեցաւ, և կըկին Նորաբեաց վերծէլ և ըղտաարել ԿԷՆ արտանակէն հրամանէ, գԲէրէն լըսրասընէլը, և ըստա հաւաքէհամայան ընէլ տուլը (ՀՆՆ. 166)։ Այդ հրովարտակը և չատ ծանրագին ընծաներ և սպասներ Երուսաղէմ ղրկուեցան Նալեանի ձեռքով, որուն վրայ Շղթայակիրը բերկրեցաւ յոյժ։ Այդ եղելութիւնները տեղի կ'ունենային 1734 սեպտեմբերին, որ կը համեմատի Աբրահամ կաթողիկոսի վերջին օրերուն։ Ուրախալի և յաջող կացութիւնը երկարատեւ չեղաւ։ Հէքիմզատէ եպարքոսը ուզեց անձամբ Պարսից խնամակալ Նատիրին կողմէ բացուած պատերազմին երթալ (§ 1966), ինչ որ պալատական բանսարկութեանց դուռ բացաւ։ Եպարքոսը պաշտօնանկ եղաւ, Կիւրճի Իսմայիլ փաշա տեղն անցաւ, որ թէպէտ վեց չաբաթ միայն պաշտօնի վրայ մնաց (ԺՈՒ. 339), սակայն բաւական եղաւ Հայոց դիրքը խախտելու։ Մանրամասնութիւնները իրենց հետեւանքներով կը պատկանին յաջորդ կաթողիկոսին օրերուն։

1969. Աբրահամ Խոշաբեցի կաթողիկոսին գործունէութեան մասին ընդարձակ յիշատակութիւններ չեն հասած, ինչպէս բսինք. միայն իւր վերջին օրերուն մանրամասնութիւնները կը գտնենք Աբրահամ Կրետացիի պատմագրութեան մէջ, և կ'ուզենք գոնէ անոնք քաղել իբր հետաքրքրական տեղեկութիւններ։

**ԱԲՐԱՀԱՄ ԿՐԵՏԱՑԻ**

Աբրահամ Կրետացին, որ առնք կ'աւանդէ, ծննդեամբ Կրետացի էր, Գանտիա քաղաքէն, և է յոյն մօրէ (ՉԱՄ. Գ. 806)։ Անշուշտ Կրետէ չէր կրնար անոր Հայ եկեղեցական դաստիարակութիւն տալ, ուստի կանուխէն հայաշատ կեդրոն մը փոխադրուած և հայկական ուսում առած պիտի ըլլայ. բայց ինքն ալ չյիշեր իւր աշակերտութիւնը, և ոչ իրեն վարդապետը եղած մէկուն մը անունը կու տայ։ Իւր հաչուով 1709'ին Թրակիոյ գաւառին, որ է Ռոտոսթոյ կամ Թէքիրտաղ, առաջնորդ եղած է (ԿՐՍ. 1), և ըստ այսմ Աղեքսանդր Ջուղայեցիէ եպիսկոպոս ձեռնադրուած պիտի ըլլայ։ Զարմանալի կը թուի որ ոչ ժամանակակից յիշատակներ, և ոչ ինքն ակնարկ մը չունին թէ ինչ դեր ունեցած է այն անվերջ խնդիրներու մէջ,

*որոնք մայրաքաղաքի և շրջակայից մէջ կը յուզուէին կաթոլիկութեան երեսէն, և պէտք կ'ըլլայ որ լիովին իրր արժանիք վերագրենք, եթէ իրօք կրցաւ իւր վիճակը զերծ պահել այդ տեսակ շփոթութիւններէն։ Իւր առաջնորդութեան տասներորդ տարին, 1719'ին, Երուսաղէմ ուխտի կ'երթայ, և երկու տարի կը մնայ այնտեղ, ճիշդ այն միջոցին որ զանազան ազգեր կ'աշխատէին Նորոգութեան աշխարհագրական տաճարէն Սրբոյ Յարութեան և ամենայն սրբոց տնօրինականաց (ԿՐՏ. 1)։ Ուխտատեղիները պտտելու մեծ փափաքով մտադիր էր Հայաստանի վանքերը ու սրբավայրերը շրջիլ Էջմիածինէ սկսելով, բայց առաջին ուխտագնացութենէն հազիւ 15 տարի ետքը կը յաջողի գործադրել, և 1734 ապրիլ 27'ին Ռոտոսթոյէ մեկնելով, 100 օրուան ուղևորութեամբ նոյն տարւոյ օգոստոս 3'ին, շաբաթ օր, ժամ առաւօտեան երեքին Էջմիածին կը մտնէ (ԿՐՏ. 2)։ Անշուշտ ցամաքի ճանապարհորդութեամբ ուղևորած է, և ճամբուն վրայ եղող քաղաքներ և վանքեր տեսած անցուցած է։ Կրետացիին միտքն էր Էջմիածինի ուխտը ընելով, անցնիլ Տարօն, Գլակայ Ս. Կարապետի վանքը. բայց Աբրահամ կաթողիկոս, որ տեղն տեղի էր ունեցած փափաքին լրումը կը տեսնէր (ԿՐՏ. 2), չթողուց որ մեկնի, և միւս տարին միասին երթալու խոստումով մօտը պահեց, և Կրետացիին ուղեկից Ռոտոսթոցի և Կոստանդնուպոլսեցի առելի քան վաթսուն ուխտաւորները առանց անոր մեկնեցան օգոստոս 24'ին, շաբաթ օր, Կաղզուանի առաջնորդ Յովհաննէս վարդապետի գլխաւորութեամբ (ԿՐՏ. 3)։*

**1970**. *Օգոստոս 24'էն մինչև նոյեմբեր 11 անցնող երկուքուկէս ամիսներուն մէջ երկու անուանակիցներ գրեթէ իրարմէ անբաժան կեանք մը անցուցին։ Երեքշաբթի օր, օգոստոս 27, միասին կը մեկնին շրջակայ վանքերը պտոյտ մը ընելու՝ տանելով աւելի միաբան եպիսկոպոսներու և վարդապետներու ուղեկցութեամբ։ Առաջ կ'երթան Յովհաննավանք, ուր կաթողիկոսը նոր խորանի ու սեղանի մը օծումը կը կատարէ. հոնկէ կ'անցնին Սաղմոսավանք, ուր Լուսաւորչի անապատը կ'այցելեն. և հետզհետէ Ուշի, Փարպի, Կարբի, Մուղնի և Օշական հանդիպելով Էջմիածին կը դառնան (ԿՐՏ. 4)։ Կրետացին գիտել կու տայ, թէ կաթողիկոսն անդադարէր դառնալ ի սուրբ տեղն, զի էր ժամանակն խռովութ, և ազգէ ազգէ զօրաց գային ի Էջմիածին, զոր գալոցն Թահմազ խանին, այսինքն է Թահմազղուլի Նատիրին, և շուրջն զօրացն Պարսկային (ԿՐՏ. 4), ինչպէս մենք ալ արդէն յիշեցինք (§ 1966)։ Կրետացին սակայն, Էջմիածինի մէջ հիւր ըլլալով, ազատութիւն կ'ունենայ պտտիլ. Նորէն շաբաթ մը կ'անցընէ Լուսաւորչի անապատը Սաղմոսավանքի մօտ, և հոկտեմբեր 16'ին նոր պտոյտ մըն ալ կը սկսի, Երևան, Խորվիրապ, Ակոռի, Հաւուցթառ, Այրիվանք, Գառնի, Նորք, և Ջագավանք, ուր կ'ընդունի կաթողիկոսէն շուտով ետ դառնալու հրամանը, զի ի խռովութեան պատահելոյ նմա, և զի համայն խոստացեալ էին զօրքն ի սուրբ աթոռն։ Կրետացին կը հասնի նոյեմբեր 4'ին երեքշաբթի օր (ԿՐՏ. 6), և հոն հասած կը գտնէ Եւդոկիոյ, Նուիրակ Աղեքսանդր վարդապետը, և Կոլոտի աշակերտ Սարգիս վարդապետը (ԿՐՏ. 6), որ է Սարգիս Սարաֆեան, Կոլոտի յառաջադէմ աշակերտներէն, և Կեսարիոյ առաջնորդ, որ Էջմիածին կու գար եպիսկոպոս ձեռնադրուելու (ԳՍՍ. 157)։*

**1971**. *Կրետացին Էջմիածին հասնելով կաթողիկոսը անկողին ինկած կը գտնէ երկու աւուրբ յառաջ, այսինքն նոյեմբեր 2'ին, շաբաթ օր։ Կ'ուզէ հիւանդութեան ինչ ըլլալը հասկընալ, սակայն ուրիշ պատասխան չկրնար առնել, բայց եթէ փոխոր անձն իմ ցաւի, և ոչ գիտեմ պատճառն և զօրքն (ԿՐՏ. 7)։ Սակայն գիտելով թէ համայն խոստացեալ էին զօրքն ի սուրբ աթոռն, ելեալ և ի գիւղն, և թէ զօրաց ձեռն, ինչպէս Սարգիս Թէքիրտաղցի և Զաքարիա Բաղիշեցի վարդապետները, ու կաթողիկոսի փոքրաւոր Աւետիքը, և այլ ի մահտեսեայ, և ի գիւղն յուղին (ԿՐՏ. 6), պէտք է հետեւցնել թէ վարակիչ համաճարակի մը դիմաց կը գտնուինք, թէպէտեւ ինչ ախտ ըլլալը որոշելու չափ նշաններ տրուած չեն։*

ԿՐԵՏԱՑԻՆ
ՅԷՋՄԻԱԾԻՆ

ԽՕՇԱԲԵՑԻԻ
ՄԱՀԸ

Կրետացին իբրեւ կաթողիկոսին մտերիմ, գիշերներ կը լուսցնէր անոր անկողինին մօտ, հիւանդին և մօտը եղողներուն բանադատութեամբ միայն հանգստանալու կ'երթար։ Կիրակի, Նոյեմբեր 10'ին հիւանդին վիճակը կը ծանրանայ. շուրք գմահծուն նոտելով փօրտնէտ, կը գրէ Կրետացին, գիշերուան մինչեւ ժամը 5 նորէն կը հսկէ, մինչեւ որ ուրիշներ զինքը կը յորդորեն, թէ գնա դադէ քօ տեղը. բայց հազիւ երկու ժամ անցած, յետ հատուրակելոյ գիշերոյն, կու գան զինքն արթնցնել, թէ հիւանդը տկլճանդեա երեւի, և երբ կու գայ, կը տեսնէ որ է ու և է տուր ընդոյն եր է հոգեվարութեան։ Իրօք ալ առաւօտեան դէմ յենն կամ տասն ժամու գիշերոյ, լոյս երկուշաբթի, հոգին կ'աւանդէ, 1734 Նոյեմբեր 11 երկուշաբթին չլուսցած։ Կրետացին մահուան հեշտ և հանգիստ եղած ըլլալը բացատրելու համար կը գրէ, թէ առանդեաց շմուսար հոգին էոր է յետն հրեշտակէ բարոյ տյնդեա, որդեօ թէ ոք հանցե խնձոր մի է ծոցոյ և տոցե բարեկամին։ Թաղման կարգը չեն կրնար երկուշաբթի կատարել, զի նոյն օր Երեւանի կուսակալ Ալի փաշան ալ կը մեռնի յառաւօտեան ճաշու ժամու, և թաղման հրամանագիրը կ'ուշանայ, մինչեւ որ կուսակալութեան գործերը կը ստանձնէ զինուորական հրամանատար Տէրէնտէցի Հիւսէյին փաշա։

Երեքշաբթի ինքն Կրետացին կը պատարագէ և կ'օծէ, բայց Ս. Գայիանէ չկրնար երթալ թաղելու, վասն սաստիկ ցրտոյն, որ տեղեկեր օր ընդ մէջ, և պատարագէն վերջ տենդը բռնելուն, կը պարտաւորուի անմիջապէս մահիճ մտնել. բայց չորեքշաբթի այգը կը կատարէ գերեզմանին վրայ շուրջ սուրբ սոստեգ տնօ-տոյն միասին տանելով (ԿՐԵ. 7)։ Այսպէս կը վերջանայ Աբրահամ Խոշաբեցիի կաթողիկոսութիւնը, երեք ընկերակից եկեղեցական պետերէն առաջին ինքն բաժնուելով աշխարհէս, և քակտելով այն գեղեցիկ զուգադիպութիւնը, որով Վարդան Բաղիշեցիի երեք աշակերտները, Խոշաբեցին ու Շղթայակիրն ու Կոլոտ միեւնոյն ատեն երեք մեծ աթոռներուն վրայ կը գտնուէին։ Խոշաբեցին երեքներուն մէջ երիցագոյնն ու նախապատիւը եղած չերեւար, զի մէջերնէն Շղթայակիրը եղած էր առաջին անգամ Գլակայ առաջնորդ ընտրուողը (§ 1910), հետեւապէս չենք համարձակիր տարիքով ալ խոր ծերութեան հասած ըսել Խոշաբեցին։ Մահուան ալ համաճարակի մը աթիւ եղի ունեցած ըլլալը, չափսեր այդ ենթադրութեան դիմել, և զարմանալի է որ Կրետացին ալ, որ այնչափ մանրամասնութիւններ կը գրէ, հանգուցեալ կաթողիկոսին տարիքը չնշանակեր։

# Տ. ԱԲՐԱՀԱՄ Գ. ԿՐԵՏԱՑԻ

ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐ.

**1972.** Քանիցս յիշեցինք թէ չփոթ ժամանակի մէջ կը պատահէր Խոշաբեցիին մահը, և արդէն չորեքշաբթի, 1734 Նոյեմբեր 13'ին, Ս. Գայիանէէ դարձող միաբաններ տեսան շբոյմօթեան տրանց և կանանց, որ փախստեայ գային, վանքի Պարսիկ բանակին մօտենալուն լուրը ամէնուն վրայ ահուսարսափ էր թողած։ Միաբաններուն խումբն ալ՝ Կրետացիին հետ մինչեւ Փարաքար յառաջացած էին Երեւանէ եկած բարապանին ստիպմամբ, և հազիւ բաղում աղաչանօք, և է յետոյ նորա հետեւ ոսկի ընծայելով, կրցան վանք դառնալ, չէ մի գոյցէ է փոլ շրոյն Պարսից, գտանիցէն է մէջ բերդէն Երեւանայ։ Տագնապալից ժամանակը կը ստիպէր անմիջապէս աթոռին գահակալ մը և միաբանութեան գլուխ մը տալ. և ամէնքը համամիտ գտնուեցան կաթողիկոս ընտրել նոյնինքն Աբրահամ Կրետացին, որ իրաւ հազիւ երեք ամիսէ իվեր Էջմիածին կը գտնուէր, բայց ժիր ու գործունեայ, պետական գործերու հմուտ, և տաճկական յարաբերութեանց փորձառու անձ մը կը սեպուէր, և միակ կրողն էր՝ ներկայ պարագայից պահանջած խոհական և աջալուրջ հայրապետն ըլլալ։ Այդ համամտութեան մէջ Կրետացին միայն էր որ անհա-

*մաձայն կը գտնուէր, և ոչ մի կերպով չէր ուզեր կաթողիկոսութեան լուծին ներքև մտնել։ Բայց միաբաններ իրենց որոշումը տուած էին, և մինչև իսկ Երևանի կուսակալութեան հաղորդուած էին, և չորեքշաբթի երեկոյէն յատուկ բարապան մը եկած էր՝ զինքն կուսակալութեան մօտ առաջնորդելու, որ պաշտօնական գործողութիւնները կատարուին։ Անհնար էր պետական հրամանին անսաստել. հինգշաբթի առաւօտ կանուխ, յակամայ կամօք տարեալ տարան յԵրևան Կրետացին, ընդ մեզ վարդապետօք. Թէպէտև տօնզին օրն էր, բայց սաստիկ յուզումներ տենդի դարման են, և ինքն ալ կը գրէ, թէ յորում զերծայ ի նոյն օրն (ԿՐՏ. 8)։ Երևանի մէջ առաջ կուսակալութեան դիւանապետին առջև կ'ելլէ, և կը սկսի պատճառանքներ յառաջ բերել, թէ ոչ ունիմ համբերութիւն, թէ ծերեմ և տկար եմ, և թէ հրաման ունիմ որ զիս անդրէն ի վիճակն իմ դարձուցանէք։ Դիւանապետը դժկամակութեան յաղթելու համար, զաղաչականն ի խրոխտական և սպառնական կը դարձնէ, և փաշային առջև հանել կու տայ, որուն Կրետացին կ'առաջարկէ, եթէ մեր նախնի սովորութիւնն այն է, որ մահուամբ տանեն Սպահան և Ստամպօլ։ Սակայն փաշան անողոք կը մնայ, և ամէն պատասխանատուութիւն իւր վրան կ'առնէ, զի ահա, կ'ըսէ, երկուց կողմանց զօրք և պատերազմանք եկեալ էին, և Էջմիածին ի վերայ ճանապարհին է, ուստի պէտք է անմիջապէս գլուխ մը ունենայ։ Ասոր վրայ, կ'ըսէ Կրետացին, տարցեն զիս արտաքս և հանցեն զլուսաւորութիւն ի Էջմիածնայ միաբանութեան ուղղուած, թէ որովհետև ընտրեցէք և կամեցայք զդա լինել ձեզ գլուխ, ահա հրամեցի, զոր օրէնք և սովորութիւն ունէք, կատարեցէք (ԿՐՏ. 9)։ Այսպէս կը լրանայ Կրետացիին ընտրութեան գործը, նախորդին մահուան չորրորդ օրը, 1734 նոյեմբեր 14'ին։*

**ՍԱՐԳԻՍ ՍԱՐԱՖԵԱՆ**

**1973**. *Սարգիս Սարաֆեանի ներբողաբանը կը գրէ, թէ նա ինքն եղաւ Աբրահամ Կրետացին ընտրելի ցուցնողը, և թէ միաբանութիւններէն ոմանք հակառակ էին անոր ընտրութեան. բայց Սարգիս անոնց ընդդիմութեանը յաղթեց, թէ ընտրութեան հաւանեցուցման պէտքը ցուցուց, և թէ իւր վրան առաւ Կոլոտի հաւանութիւնը առնել, և թէ ասոր վրայ կատարուեցաւ Կրետացիին կաթողիկոսական օծումը (ԳԱԼ. 22—23)։ Սակայն Կրետացիին ինքնագիր պատմութիւնը, ոչ Սարգիսի անունը կու տայ, ոչ միաբաններու ընդդիմութիւնը կը յիշէ, և ոչ Սարգիսի երաշխաւորութեան խօսք կ'ընէ, որով ներբողաբանը՝ Սարաֆեանի ինքնագով տեղեկութիւններով կազմած պիտի ըլլայ իւր պատմութիւնը։ Եթէ միաբանութեան մէջ անհամաձայնութիւն գտնուէր, հնար չէր նորեկ Սարգիսին խօսքով՝ մէկ օրուան մէջ համաձայնութիւնը գոյացնել, զի Խոշաբեցին երկուշաբթիին մեռած էր, և չորեքշաբթիին Կրետացիին ընտրութեան պետական գործողութիւնները կատարուած էին, և բարապանը ղրկուած էր Էջմիածին։ Արդէն յաջորդութեան նախագահութիւնն ալ Կրետացիին թողուիլը, նախորդը չմեռած միտքերուն պատրաստուած ըլլալը կը ցուցնէ, մինչ Սարաֆեան՝ Խոշաբեցիին անկողին իյնալէն ետքը հասած էր, ինչպէս իւր ներբողաբանն ալ կ'ընդունի (ԳԱԼ. 21)։ Պարսկաստանի և Տաճկաստանի հաւանութեան չսպասելու որոշումը տուողը՝ առժամեայ կուսակալն էր, ուստի մեր կարծիքով հիմնական չեն երևիր Սարաֆեան Սարգիսի փառաբանութեան համար ցուցուած պարագաները, և Կրետացիին ընտրութիւնը Մայր աթոռի միաբանութեան միաձայն որոշման պէտք է վերագրել։ Երևանէ դառնալէն ետքը տասն օր կ'անցնի, մինչև որ օծման պատրաստութիւններ կը կատարուին, եպիսկոպոսներ և վարդապետներ կը հաւաքուին, իշխաններ և գիւղաւագներ կը հրաւիրուին, և օծումը հանդիսապէս կը կատարուի 1734 նոյեմբեր 24'ին, ի Ցինակաց կիրակէն, այսինքն Ցինակաց բարեկենդանէ ետքը եկող առաջին կիրակին (ԿՐՏ. 10)։ Անմիջապէս յաջորդ օրը, երկուշաբթի 25 նոյեմբեր, եպիսկոպոսական ձեռնադրութիւն տեղի կ'ունենայ, և Սարգիսի հետ (ԳԱԼ. 24) անշուշտ ուրիշ ձեռնադրուողներ ալ կ'ըլլան։ Սակայն Սարգիս չմեկնիր, և մինչև 1735 գարուն Էջմիածին կը մնայ (ԳԱԼ. 25), ինչ որ պիտի չկարենար ընել, եթէ իրօք ինքն յանձնառու եղած էր Կ-Պոլ-*

սոյ պատրիարքին և ժողովուրդին հաւանութիւնը փութացնել։ Նորընտիր կաթողիկոսը նեղութեամբ կ'անցընէ ձմեռը, վասնզի ներսէն կը նեղուէր ճոն դօխտասիեան ֆոնէց, որ ու ֆոյր ամենային. իսկ դուրսէն վըստահ չէր կացութեան վրայ։ Նատիր Գանձակը պաշարած էր, իսկ Օսմանցոց կողմէ սպարապետ Քէօփրիւլիւ Ապտուլլահ փաշա, հզօր բանակով Ամիդէ ելած կը յառաջէր Բայազիտի և Կարսի ճամբով, և Երեւանի և Տփղիսի զօրավարներուն պաշարի ու պաբէնի հրամաններ էր յղած (ԿՐԵ. 10)։ Նատիրի գործերը, որչափ ալ ուղղակի եկեղեցական կերպարան չունենան, բայց որովհետեւ կաթողիկոսը անձամբ մասնակից եղած է, և ինքն մանրամասնօրէն գրած է, պատշաճ կը համարինք մենք ալ կարեւոր կէտերը համառօտիւ քաղել։

**1974.** Նատիրի արշաւանքին վերջնական արդիւնքը լրացաւ 1735 տարին։ Ապրիլի մէջ Նատիր սկսաւ Գանձակի կողմերէն Կարսի վրայ երթալ՝ Լօռիի և Ղազախի վրայէն, բայց պաբէնի և դարմանի պէտքը ստիպեց Ապարանի կողմը դառնալ և Արարատի դաշտն իջնել։ Այս առթիւ առաջին անգամ կաթողիկոսը պէտք զգաց Նատիրին քով գնալ։ Որչափ ալ Նատիր իբր թշնամի կու գար, սակայն զըրկուար չէր պատերազմին ելքը գուշակել, և Կրետացին նախատեսութեամբ կը պատրաստէր իւր ապագայ յաջողութիւնը։ Մայիս 27'ին Հոգեգալստեան երեքշաբթիին, Էջմիածինէ կը մեկնի ընծայէր և պատուա-սիրութեամբ, վարդապետօք և նուիրօք, Յովհաննավանք կը գիշերէ, չորեքշաբթի Նատիրին բանակատեղը կը հասնի Ապարանի մօտ՝ Շիրաղալա կոչուած գիւղը, և միւս առտուն մայիս 29 հինգշաբթի, անոր կը ներկայանայ և սիրով կ'ընդունուի։ Բայց որովհետեւ Նատիր ալ պիտի մեկնէր, կաթողիկոսն ալ մէկտեղ կը տանի զինուորական պատիւներով, մինչեւ երրորդ օր քովը կը պահէ, սեղանակից կ'ընէ, և ուրբաթին կ'արձակէ, երբ ինքն ալ ետեւէն գալով մայիս 31'ին շաբաթ օր Էջմիածինի մօտ կը բանակի (ԿՐԵ. 12)։ Կաթողիկոսը անմիջապէս դիմաւորելու միտք չըներ, և երկուշաբթի յունիս 2'ին կը ղրկէ Աղեքսանդր վարդապետ աթոռակալը, որ Նատիրը բարկացած կը գտնէ կաթողիկոսին անմիջապէս չգալուն համար, և չփոթած կը դառնայ։ Կաթողիկոս ալ կ'այլայլի, ահա դորպէս, կը գրէ, և է կենդանի յաստուածութեան, և սկսաւ դէտէն ոչինչ գոյ. առտու մէկտեղ կ'որոշէ երթալ, առաջուընէ անկեալ առաջի սուրբ Իջման տեղւոյն և հոգին Աստուծոյ յանձնելէ ետքը։ Լսեալ ոսկէ և կեանք Նատիրին առջեւ կ'ելլայ, և ինքզինքը կ'արդարացնէ թէ, տեղական սովորութեանց անգիտակ էր, ուրիշը յանցանք չունի, եթէ պատիժ կայ, իրեն տրուի։ Նատիր կը հանդարտի, անկեղծ յայտարարութեամբ կը մեղմանայ, հարկաւ առաջին տեսութեան ատեն ալ զննած ու կշռած էր կաթողիկոսին զգացումները, որովհետեւ հաստատած էր անոր կաթողիկոսութիւնը, և խնդիրներն ալ շնորհած։ Մինչ մահու սպառէ, խիղճ ելեալ էր, կը գրէ Կրետացին։ Նատիր կ'առաջարկէ որ երթայ միաբանութեամբ և հանդէսով դիմաւորէ, և ըստ այսմ վանք գալով և եկեղեցական թափօր կազմելով Նատիրը վանք կ'առաջնորդէ, որ Մայրտաճար ալ կը մտնէ, բացատրութիւններ կ'ուզէ, և կը հրամայէ ժամ ասել։ Համդխապէս Հռփսիմեանց երեկոյեանը կը կատարուի. կաթողիկոսը այլազգեաց լեզուաւ բանախօսութիւն ալ կ'ընէ, և նոյն հանդէսով մինչեւ վանքին դուռը կ'առաջնորդէ Նատիրը, որ նուէր ալ կը թողու, և մեծ գոհունակութեամբ կը մեկնի (ԿՐԵ. 13), յիշելով միանգամայն թէ բանակին կողմէ վանքին արտերուն հասուցած վնասներն ալ պիտի հատուցանէ։ Միւս առտուն Նատիր աւագանին կը ղրկէ վանքը տեսնելու, ինքն ալ նորէն կը դառնայ և կը մեծարուի, և կաթողիկոսը կը քաջալերէ, որ մօտալուտ պատերազմներէն չվախնայ, այս օծեալս մեր է, կ'ըսէ, և դու մեզ եղբայր ես մեր, դու ես չէիր, կեցցես բարով։ Այս անգամ իւր վրանը փոխադրած էր Փարաքարի վրայ, և կաթողիկոսը գանց չըրաւ նոյն երեքշաբթի օր, յունիս 3'ի երեկոյին, շնորհակալութեան երթալ ոսկւոյ ընծայէր (ԿՐԵ. 15)։

**1975.** Ասոր վրայ դէպքերը իրար կը հալածեն։ Հինգշաբթի յունիս 5'ին Նատիր

ԿՐԵՏԱՑԻՆ ԵՒ ՆԱՏԻՐ

*լուր կ'առնէ, թէ Ապտուլլահ Քէօփրիւլին Երեւանի պաշտպանութեան հասած է, ան-միջապէս ղումբռայն ծանրա-քոյն կորաքին, որոնց հետ և ղուռհէին, այսինքն կանանո-ցը կը հեռացնէ դէպի Թար-վէզ, և իր բանակը կը դնէ Ախիթէփէ։ Իրօք ալ Քէօփրիւլիւ չարաթ օր, յունիս 7'ին կ'իջնէ Եղվարդի դաշտը, ուր յաջորդ կիրակի առտու, ժամ երկուքին պատերազ-մը կը խառնուի, և Նատիր՝ դիրքերէն օգ-տուելով, և թշնամին դժուարին տեղեր մղելով մեծ յաղթութիւն կը տանի, և 18,000 հոգիով 40,000 հոգի կը կոտորէ, որոնց մէջ նաեւ Քէօփրիւլիւ սպարապետը, Սարը Մուսթաֆա զօրավարը, և այլ երկու փաշաներ (ԿՐԵ. 18)։ Այս յաղթութեան օրը ուրիշներ յունիս 14 կը դնեն, և պատե-րազմին տեղը՝ Պաղաւերտ և Ախիփէնտի կ'անուանեն (ԺՈՒ. 340)։ Անուններու յայտ-նապէս աղաւաղուած են, իսկ օրը եթէ նոր տոմարով ալ հաշուենք, 8/19 յունիս պէտք էր ըլլար։ Կրետացիին օրագրութիւնը ա-կանատեսի մանրամասնեալ վկայութիւն ըլ-լալուն, իբր ստոյգ պէտք է ընդունուի։ Կա-թողիկոսը, որ ինքզինքը՝ ես տրուպ Աբրա-համ հոգեւոր տէրս կ'անուանէ, երեքշաբթի յունիս 10'ին յաղթականը շնորհաւորելու կ'երթայ Եղվարդ, դաշտին երեսը սփռուած դիակներուն մէջէն անցնելով։ Կիսամեռ Հայու մը հանդիպելով, գրաստի վրայ բեռ-ցընել տալով Աշտարակ կը տանի և խնամել կու տայ, և երբ միւս օր Էջմիածին կը դառ-նայ, շատ մը վիրաւորներ հոն եկած կը գտնէ, Թուրք, Հայ, Հոռոմ, և ամէնուն ալ դեղ ու խնամք կը հրամայէ անխտիր (ԿՐԵ. 19)։ Նատիր յաղթութենէն ետքը Երեւանը պաշարման ներքեւ առնելով, ինքն Գեղար-դի և Ծաղկունեաձորի բարձունքները կ'եր-թայ հանգստանալ, և Եղվարդի կողմերը կը դառնայ Աստուածածնայ բարեկենդանին, որ կը հանդիպէր օգոստոս 10'ին։ Անմիջապէս մօտը կը կանչէ կաթողիկոսը, և իրեն մօտ կը պահէ ու սեղանակից կ'ընէ, բայց պահ-քին պատճառով կաթողիկոսը կը բաւակա-նանայ ուտել միայն ի մեզբէն և յայլոց քաղ-ցեղնոց։ Այդ պատճառով Նատիր էր ասա-քի էրէւան քալասին ամամի լեցնել տալով, ա-*

*նոր կու տայ տանելու (ԿՐԵ. 21), երբ Նա-ւակատեաց չորսն օրն, այսինքն Շողակաթի տօնին, օգոստոս 16'ին, վանք կը դառնար։ Վերափոխման առաջին յետ դոդորտէ ի քե-ղանն փոխեցէին չէերանեալն Նատիրի, կը գրէ Կրետացին, ըմպելով զթաժն յանուն նորա (ԿՐԵ. 22)։ Երբոր Նատիր Կարսի պաշարման կ'երթայ, Աբրահամ կը գրաղի Նատիրի յանձնարարութեամբ յիշատակի գմբէթ մը շինել տալ Եղվարդի բլուրին վրայ, ուր Նատիրի վրանը զարնուած էր յաղթութեան օրը. շինութեան հսկող նշանակելով Ստե-փանոս Կարնեցի՝ Ղալայջիօղլու մականու-անեալ վարդապետը (ԿՐԵ. 22)։ Կարսի պաշարման սաստկութիւնը, և մանաւանդ Պարսիկ ասպատակները, որք մինչեւ Կարին և Պայազիտ հանդեցին չէրիէր, դպրեցին զլխ-տածն և քերեցին զմորթէն և զանասունս (ԿՐԵ. 22), Օսմանցիները հաշտութիւն խնդրելու ստիպեցին, Երեւանը յանձնելու պայմանով, և իրօք ալ 1735 սեպտեմբեր 22'ին, Վա-րագայ պահոց երկուշաբթին, Պարսիկներ Երեւան կը մտնեն, և այսպէս Էջմիածին իր նահանգով նորէն Պարսիկ տիրապետութեան կ'անցնի, թէպէտ ամիսներ առաջ առանց քաղաքի ալ՝ վանքը Օսմանեան իշխանու-թեան ներքեւէն ելած էր։ Պատմուած պա-րագաները կը ցուցնեն թէ այդ մասին Աբ-րահամ Կրետացին համակիր և պատրաստա-կամ գործակցութիւն ընծայած է Պարսիկնե-րուն, հակառակ որ ինքն Պարսիկներու հետ բնաւ յարաբերութիւն ունեցած չէր, բայց կ'երեւի թէ Օսմանեանց զօրութեան և տի-րապետութեան մասին ալ նպաստաւոր ըմ-բռնում չունէր։*

**ԷՋՄԻԱԾԻՆԻ ՀԱՄԱՐ**

1976. *Զարմանալի ըլլալու չափ աճե-ցաւ Նատիրի և Աբրահամի մտերմութիւնը, ինչպէս Երեւանեցին ալ կը գրէ, թէ կորէ օծերոց և մեծ առ յինքն գոհէր, զոր և հայր կոչէր. և շատ խոր-հուրդ և առնէլիս էր ընդ սմա գործէնէր, և սմա հարցանէր (ՋԱՄ. 30)։ Կարսի պաշարումը վերցնելէն և Երեւանը գրաւելէն ետքը, Նատիր դէպի Տփղիս ուղեւորեցաւ, և նորէն կաթողիկոսը իրեն մօտ ուզեց, որ հոկտեմ-բեր 1'ին Էջմիածինէ մեկնելով, 27'ին Տփ-ղիս կը հասնի, Նատիրէ օր մը ետքը (ԿՐԵ.*

23)։ Այստեղ եղած գործերէն նշանակելի է, Նատիրի Հայոց համար վկայելը, թէ ինչ ծառայութիւն արարին մտերմաբար՝ և միմեանց օգնականութեան յանձնայն ջերմութենէ և յանձնայն յանձինք և անձնայն գինով. և կաթողիկոսին հրամայելը որ իրեններուն համար ինչ խընդիր որ ունի՝ գիրով առաջարկէ, և բերել, կ'ըսէ, որ հրամայեմ։ Նա ալ այդ առթիւ հնգետասան բաժան, այսինքն հրովարտակներ կ'ընդունի (ԿՐԵ. 24), և յաջորդ օրերու մէջ ուրիշ նորեր ալ կը ստանայ, որով այն օրերու մէջ աւելի քան երեսուն և հինգ բաժան առած եղաւ։ Ասոնց կարգին յիշատակութեան արժանի է, աթոռապատկան եօթը գիւղերու սեփականութեան հաստատութիւնը, որք են, Էջմիածին, Մաստարա, Ցռանկանոց, Օշական, Բիրազլու, Տիպաքլու և Չէլէպիղըշլա (ԿՐԵ. 26), վերջինս Չէլէպիքեանտ և Քէչիչքեանտ ալ կոչուած է (ՋԱՄ. 120)։ Նշանաւոր են նաև Խորասան փոխադրուելիք 300 Տփղիսեցի տուներուն տեղերնին մնալը՝ դրամի և ցորենի վճարմամբ, և Խորասան փոխադրուելիք 300 Արարատցի տուներուն գոմէշներ և գումարներ շնորհուիլը (ԿՐԵ. 25), ու Տաճկաստանէ ուխտի և առեւտուրի եկող Հայերուն անհոգոց և աներկիւղ երթեւեկը, զոր յատուկ կոնդակներով հաղորդեց կաթողիկոսը՝ Կարսի, Կարինի, Եւդոկիոյ, Պայազիտի, Վանի և Բաղէշի առաջնորդներուն (ԿՐԵ. 27)։ Ընդհանրութեան դիւրութիւններուն ալ մասդրութիւն դարձուցած է Կրետացին, և Երեւանի փողերանոցին բացուիլը ընդունած, չէ թուի կարէ յայտ նախադասեցաւ և տարբերցաւ։ Մինչեւ իսկ հրաման ստացաւ որ կառավարիչներ առանց կաթողիկոսին գիտութեան, չրջակայից ժողովուրդէն նոր տուրքեր չհաւաքեն, և ի վերայ ուղղափառաց ծանրութիւններ չբարդեն (ԿՐԵ. 26)։ Կրետացին այդ ուղեւորութիւնն ալ յաջողութեամբ աւարտելով, Սանահին, Հաղբատ, և Հաղարծին հանդիպելով Երեւան և Էջմիածին կը դառնայ, և հազիւ թէ հանգստանալու չափ ատեն կ'ունենայ, զի Նատիրէն նոր հրաման կը հասնի, որ իրեն մօտ դայ Մուղանու դաշտը, ուր ամէն կողմէն պետութեան և ազգութեանց աւագանին հրաւիրած էր Նատիր՝ կարեւոր խորհրդակցութեան համար, առանց հայտնելու որ ժամանակը ձմեռնային էր, և Մուղանի դաշտին մէջ վրաններու և եղեգէ տաղաւարներու ներքեւ պիտի ապրէին հրաւիրեալները, պարտաւորեալ ալ ըլլալով մորթքն և անասնոց պէտքերը մէկտեղ տանիլ, չէ այն տեղն ու էրանէ (ԿՐԵ. 28)։

**1977.** Այդ մեծ համախմբութեան ներքին շարժառիթը Պարսից կայսրութեան գահակալը որոշելն էր։ Թահմազ իւր աքսորին մէջ մեռած կամ սպանուած էր, նմանապէս Աբբաս մանուկն ալ մեռած (ՏՊԷ. 362) կամ սպանուած էր (ՋԱՄ. 30), և Նատիր միայն խնամակալի անուն կը կրէր, և գահը պարապ կը նկատուէր։

**ԿՐԵՏԱՑԻՆ Ի ՄՈՒՂԱՆ**

Հրաւիրեալներ ամէն կողմէ ճանպայ կ'ելլէին, և Մուղանու դաշտը հաւաքուած մեծամեծներուն և հետեւորդներուն, զինուորներուն և սպասաւորներուն թիւը հարիւր հազարէ աւելի կ'ըսուի (ՏՊԷ. 362)։ Աբրահամ Կրետացին ալ դեկտեմբեր 3'ին չորեքշաբթի օր Էջմիածնէ մեկնեցաւ 25 հետեւորդներով, վեց վարդապետ, որք են Ստեփանոս Ղալայջիօղլու՝ ճանապարհի աթոռակալ, Բարսեղ՝ գաւազանակիր, Եղիա Քրդաստանցին՝ ախոռապետ, Մկրտիչ Տաթեւացի՝ կարաւանապետ, Խաչատուր Ասպահանցի՝ օգնական, Սարգիս Կեսարացի՝ ժամասաց, 1 քահանայ՝ Թովմաս Ագուլեցի, 2 սարկաւագ, 1 գրագիր, 3 չաթիր, 3 սպասաւոր, 3 ուղտապան, 3 ձիապան, 3 ջորեպան, և փոխադրութեանց 10 ուղտ, 10 ջորի և 16 ձի (ԿՐԵ. 28)։ Խորվիրապի, Աստապատի, Երնջակի, Ագուլիսի և Ղարադաղի ճամբով, և տեղտեղ հանդիստ ընելով 1736 յունուար 3'ին, Ծննդեան պահոց շաբաթ օրը կը հասնի Մուղան, և իրեն ալ եղեգեայ տաղաւարի մէջ օթեւան կը տրուի։ Երեքշաբթի յունուար 6, իւր մեծ և փառաւոր վրանը զարնել տալով, և բոլոր լուսաւորչածին աջին կոչել տալով, կը կատարէ զտօն ծննդեան տեառն ժամատեղի և պատարագէ, և Երասխի վրայ Ջրօրհնէք ալ կը կատարէ։ Եւ այս էր զարմանք, կը յարէ Կրետացին, չէ Պարսիկներն առնէին ի միաբանութեան ջրոյն և օծանէին չէրեւս (ԿՐԵ. 31)։ Ջիւնէն նեղուելով յունուար 7'ին կ'ուզէ Տուգախ փոխադրուիլ, բայց Նատիրի համնելուն

լուրը առնելով Մուղան կը դառնայ երեքշաբթի, յունուար 13'ին, և չորեքշաբթի կը ներկայանայ Նատիրին Երևանի Հայ ու Պարսիկ մեծամեծներով, և յատուկ պատիւներ կը տեսնէ, և երեկոյին նորէն առանձինն խորհրդակցութեան կը հրաւիրուի։ Այդ միջոցին կը հասնին օտարազգի պատգամաւորներ ալ, և Օսմանցոց կողմէն Ահմէտ փաշա՝ սպարապետ, և Կէնճ Ալի փաշա՝ դեսպան, Կարսի կուսակալը և ուրիշներ, և յունուար 22'ին հինգշաբթի օր հասաւ Նատիրին եղբայրը՝ Իպրահիմ խան, պօյճըահասըլ և յօղունտամ, նման էղբօրն։ Նոյն օր կաթողիկոսը նուէր կը ստանայ չէքէօօ պօտ-ասալըն էտիֆօրան և մի կոնքեռ (ԿՐՏ. 28), համանաբար Վրաստանէ ձեռք ձգուած, որոնց մէկուն մանրամասն նկարագրութիւնը կը գրէ (ԿՐՏ. 36)։ Ասոր վրայ ամէնքը կաթողիկոսին մօտ կու գան աչքալուսել և շնորհաւորել, զարմանալով ընդ օհրոյ նշանն մեծին (ԿՐՏ. 37)։ Կրետացին շատ մանրամասնութեամբ կը պատմէ պայրամին հանդէսները, որ տեղի ունեցան փետրուար 3'ին, երեքշաբթի օր, բացատրելով բոլոր արարողական և պատուասիրական ձևերը, զգեստները ու զարդերը։ Իսկ երկրորդ օրը, փետրուար 4 չորեքշաբթի, երբ բոլոր բազմութիւնք բստ սովորութեան գացած էին է օէլամ, Նատիրի կողմէն եօթը պատգամաւորներ կու գան ըսել, որ փնտցեալ է մէջէ յերամ խորհեօջէ ընդ մեծանօ, թէ շահ խնդրել յեղև էրկրէն կառավորող. աւելցնելով, որ Նատիր ծերացեալ և զօրապէտեալ, կամ փնալ է խորասան, և աղօթել (ԿՐՏ. 51)։ Յայտնի էր թէ ամէնքը համակամ և համախորհուրդ Նատիրը պիտի ուզէին, և բստ այսմ ալ որոշեցին, և գաւառներու համեմատ խումբերու բաժնուելով, մէջերնէն պատասխանելու ալ անձեր նշանակեցին՝ իբրև տեղեկաբերներ։ Հայերուն կողմէն որոշուեցան կաթողիկոսը, և Երևանի քալանթար Մելիքջանը, և մելիք Յակոբջանը։ Այսպէս ալ պատասխանեցին երեկոյեան դէմ, նոյն եօթը պատգամաւորներուն։ Հարկ եղաւ որ միւս օր փետրուար 5 հինգշաբթի, աւելի հանդիսապէս կրկնուի այդ հաւանութիւնը (ԿՐՏ. 52), որուն հանդէպ Նատիրի կողմէն երեք պայմաններ առաջարկուեցան, որ ամէնքը երդմամբ և անխիծիւք խոստանան, որ եթէ հին Շահերու ցեղէն օրդի կամ ազգական յայտնի, անոր կողմը չանցնին, որ իւր մահուանէ ետքը էօր սօօ-խէն և շաապէն խէանտօօլէան չանէն, որ Սիւննիներու հետ կրօնական հակառակութիւն չընեն, զի մօրքարէն մէանոյն է, նոյնպէս և Ղօօրանն, մի է և նամազն (ԿՐՏ. 53)։ Ամէնքը կը խոստանան և կ'երդնուն։ Միևնոյն բանը կրկնուեցաւ ուրբաթ 6 փետրուարին, Նատիրի ներկայութեան, ուր ինքն նորէն չընդունել ցուցուց, իրեն դէմ թշնամութիւն գրգռել կրցող պատճառները յիշեց, բայց վերջապէս բազմութեան պնդելուն վրայ հաւանեալ յանձն առաւ թագաւորել։ Ասոր վրայ էրէքն կօրտացին ըջաթէն, և եօ, կը գրէ Կրետացին, ընայր մեղան է լուեալսն (ԿՐՏ. 55)։ Գրաւոր արձանագրութիւն ալ պատրաստեցին և ամէնուն կնքել տուին, և չէրէօ աօօրօ հաշէօ թէ կօրացին աօօրտել այդ գործը (ԿՐՏ. 55)։

**1978.** Ամէն առատ բոլոր բազմութիւնք պէտք էր նոր թագաւորին ներկայանար իւր յարգանքը ընծայել, և

КРЕТАЦИИН

ԿՐԵՏԱՑԻԻՆ ՊԱՏԻԻՆԵՐ

հանդիսական բարեմաղթանքներ կրկնուէին։ Այդ առիթներուն մասնաւոր դիպուածներ ալ տեղի կ'ունենային, ինչպէս փետրուար 10'ին յատուկ բարեացակամութեան առարկայ եղաւ կաթողիկոսը, երբոր Նատիր յայտնեց թէ իւր եղբայրը Իպրահիմ՝ ընդհանուր կողմնակալ նշանակած է Ատրպատականի ու Հայաստանի ու Վրաստանի, և Հերաթի Մէհմէտ խանը Երևանի կուսակալ, և անոնց հրաման տուած է նորա ամէն առաջարկները անխափան կատարել։ Այդ հանդիսութեանց օրերը ոմանք Նէվրօօզէ տօնին անունով կը յորջորջեն (ՏՊԷ. 362), մինչ Կրետացին յայտնապէս Ռամազան Պայրամին անունը կու տայ, անոր արէֆէն ալ յիշելով (ԿՐՏ. 45), և պէտք ալ է այսպէս իմանալ, զի Նեվրուզը գիշերահաւասարին օրն է, որ փետրուար 3'ին չէր կրնար հանդիպիլ։ Փետրուար 26'ին ալ, իբր լուսնոյ 25 հաշուելը (ԿՐՏ. 68), փետրուար 3'էն սկսելով Ռամազան Պայրամին հաշիւը կ'արդարացնէ։ Փետրուար 10'էն սկսան նուէրներ և գումարներ բաշխուիլ գաւառներու կարգով։ Նուէրներու հետ կը տրուէին և

*գերիներ, որոնցմէ 7000 բերած էին, Վրացի և Հայ խանըն, և ոմանց կին, ոմանց աղջիկ, ոմանց տղայ կու տային։ Փետրուար 14'ին, օրն շաբաթ առաջ Սարգսի պահին, կը գրէ Կրետացին, Երևանցւոց և Նախիջևանցւոց կարգը եկաւ. բայց տոնի շփոթ մը կայ, զի փետրուար 14'ին Տեառնընդառաջի տօն կ'իյնայ, ինչպէս ինքն ալ կ'ուղղէ ուրիշ տեղ* (ԿՐՏ. 99). *իսկ Սուրբ Սարգիսը այն տարի փետրուար 21'ին կը հանդիպէր։ Կաթողիկոսին նուիրուեցան զգեստներու և գօտիի հետ, նաև մանրէկ ակնեա, որ ծածանեցին ի վերայ վեղարին, որպէս սպանէկ, ըստ ձևոյ Պարսից։ Միւս Հայերուն ալ նուէրներ տրուեցան, Թող ի ֆերեցն, զոր ոչ ետուր քրիստոնեաներուն* (ԿՐՏ. 58)։ *Ընծայ ընդունողներ փետրուար 15'ին Նատիրի ներկայանալով մաղթանքներ խօսեցան, և Ճիհանշահի պաշտօնակալ մը բանաստեղծութիւն մը արտասանեց* (ԿՐՏ. 59), *որուն վերջը ամէնքը ամենայն գոչեցին ևն կարդացած, և ես, կ'ըսէ, թարգմանեցի յետոյ առաջի Հայոց որ յերկինս* (ԿՐՏ. 60)։ *Նոյն օր կաթողիկոսը նորէն Նատիր շահէ կը պատուասիրուի, և նոր շնորհներ կը ստանայ, որոց գլխաւորն, որ էր խօսն առնել, Ստեփան վարդապետ կ'երթայ կը բերէ երկուշաբթի առտու փետրուար 16'ին, և նոյն երեկոյին կրկին Նատիրէ կը հրաւիրուի ողջերթի հրամանին և ողջոյնին համար, նորանոր խոստումներով, թէ վանքդ ալ իմս է, թէ դուն ալ իմս ես, բնաւ հոգ մի ըներ, միայն աղօթք ըրէ* (ԿՐՏ. 63)։

**1979.** *Այլևս ընդհատուած էին Նատիրին և կաթողիկոսին յարաբերութիւնները, և հրաւիրեալներէն շատեր ալ սկսան իւկոյն մեկնիլ,*

**ՄՈՒՂԱՆԷ ՄԵԿՆԻԼԸ**

*թէպէտ փետրուար 26'ը, լուսնոյ 25'ը թագադրութեան օր նշանակուած էր, իբրև աստեղահմաներէն նշանակուած շնորհաւոր և բարեբաստիկ օր։ Այսպէս կը գրէ Կրետացին ճըշդելով* (ԿՐՏ. 67), *թէպէտ թագադրութեան օրը մարտ 10'ին դնողներ ալ կան, իբրև տարեգլուխ ազգին Պարսից* (ԽԱՉ. 260), *որ է Նէվրուզը։ Բայց Կրետացին ականատես է և օրերու հաշիւը ճիշդ կը բռնէ։ Նատիր չուզեց բոլոր բազմութիւնը պահել, և մանաւորապէս օտարազգիները ճամբեց, ընտանեկան ձև մը տալով թագադրութեան հանդէսին, կամ թէ, նկատելով որ ոչ Երևան միայն է Մուղան էր նուաղութեան հայց, այլ յամենայն տեղէ՝ Թավրիզոյ և այլք. ուստի և երթալիքներուն կարեցին զնայէնն* (ԿՐՏ. 65)։ *Կաթողիկոսն ալ պէտք էր մեկնէր անմիջապէս փետրուար 16'էն ետքը, բայց չկրցաւ, զի շատ օգտակար ձեռնարկի մը կը հետևէր։ Վերագոյնդ յիշեցինք թէ 7000 գերիներ բերուած էին Հայ և Վրացի, Պարսիկ մեծամեծներուն ընծայ* (§ 1976)։ *Կաթողիկոսին աչքին տակ կատարուած այդ բաշխումը անոր զգացումները գրգռեց, և բոլոր տրամադրելի միջոցներով այդ գերիներու ազատութեան հետամուտ եղաւ։ Գերիք բազումք Թաւրէզէ, կը գրէ ինքը, ոմանք Թանկաքէն, և ոմանք ահանաքէն, և ոմանք յէթկայէն աղջկանց և մանկանց և տղայց, վեց, ութն և տասն տարեկան, և այլք միջակոյն տղայքն հընգետասան և քսան տարեկան։ Վերջիններէ շատերուն փախուստին ալ օգնեց։ Նորածիններ ալ կային յղի կիներէն, յղացեալ ի տանց և յարանց իւրեանց, հանդէ խօսն աւէ էր գերութեան նոցա, զորս մկրտել տուաւ Ագուլիսի աւագերէց Թովմաս քահանային, որ իւր հետևորդներէն էր։ Փրկանաւորած և ազատած գերիները խումբ խումբ ճանապայ հանած էր, մաս մը Էջմիածին դարձող ուղտապաններուն հետ. մաս մը իւր ջորիներով յղած էր Ագուլիս և Սաւուպատ՝ Աղուանից Ներսէս կաթողիկոսին խնամքին յանձնարարելով. մաս մը ճանապայ հանած էր չաթիր Մաղաքիայի վերակացութեամբ, ուրիշ մաս մըն ալ ղրկած էր Սարգիս Աստապատցի և Եղիա Բրդատանցի վարդապետներուն հետ մինչև Տուղախ, Մուղանէ հինգ աւուր ճանապարհ հեռու, որ անկէ անդին Սարգիս տանի Ներսէս կաթողիկոսի ձեռնտուութեամբ, և իրեն ջորիները խարակ բարձեալ դարձուսցէ Եղիա։ Երբոր մեկնելու հրամանը եկաւ բոլոր ջորիներ գացած էին, և ես մնացի, կ'ըսէ, միայն, խեղճ և ողորմելի, միայնակ ի մէջ դաշտին, և պաշարնին ալ հատած ըլլալուն, շաբաթ մի և այլ աւելի, խորշեալ և խանձեալ ցորեան կերան, սպասելով որ ջորիները դառնան և ուտելիք բերեն։ Փետրուար 21'ին կը դառնայ Մկրտիչ Տաթևացին և 22'ին Եղիա Բրդատանցին, և կաթողիկոսը նորէն*

ձիգ կ'ընէ գերիներու մասին։ Կէլէն Բաֆէյէ, կ'ըսէ, «բէան ըր հարազատայ. ֆախ աոաւ աաէ և աաէ ֆէն ֆէրէաջն» (ԿՐԵ. 64—66)։ Փետրուար 23'ին, երկուշաբթի ինքն ալ Մուղանէ կը մեկնի՝ Էջմիածին դառնալու համար։ Զարմանալի պէտք չէ երեւի վերջին օրեր կրած նեղութիւնը, զի Նատիր չահ դայն մեկնած կ'ենթադրէր, և ինքն ալ անծանօթ պէտք էր միար ողջերթի հրամանէն առքը։ Կաթողիկոսին մեկնելէն առքը, փետրուար 26'ին հինգշաբթի, տեղի ունեցած է Նատիր չահի թագադրութիւնը, զոր Թովմաս քահանայէ լսելով նկարագրած է Կրետացին (ԿՐԵ. 68)։ Հետեւապէս ուղիղ չէ կարծել՝ որ մարտ 1'ին հանդիսապէս Նատիրին սուրը օրհնած և մէջքը կապած ըլլայ (ՁԱՄ. Գ. 815)։

**1980**. Աբրահամ Կրետացիի համար հրճնացեալ փափաք մըն էր վանքեր և ուխտատեղիներ այցելել (§ 1969), և մենք տեսանք զինքն որ միշտ պատմութեան և դաշտերով կատարած է իր ուղեւորութիւնները, որ իր կաթողիկոսական գործունէութեան լրումը կը կազմեն։ Այս անգամ ալ փետրուար 23'ին Մուղանէ մեկնելով յունիս 12'ին Էջմիածին կը մտնէ, մօտաւորապէս չորս ամիս շրջագայելով Հայաստանի հիւսիսակողմը, զոր օրովը և տեղերու անուններովը նշանակած է իր պատմութեան մէջ (ԿՐԵ. 73—79), բայց մենք պէտք չենք զգար ամէնն ալ յիշել։ Տուղախի Հաւրութ գիւղը կ'անցրնէ Բուն բարեկենդանը, մարտ 7'ին, Աղուանից Ներսէս կաթողիկոսի հետ, որուն հետ Բէդէր մէր աչաբէաւ էաէ, կ'ըսէ, Բայց դէա էաա ընդ մեծանա ու էէնէ աէաէաւ (ԿՐԵ. 73)։ Տաթեւի մէջ Բարահանջ գիւղը բանադրանքէ կ'արձակէ, և մարտ 16'ին, երկուշաբթի օր լուսնի խաւարումը կը տեսնէ (ԿՐԵ. 75)։ Սարգիս Գարոնտէրի Մեծ-Անապատը (§ 1619) քանի մը օր կը մնայ. շատ մը գիւղեր և վանքեր այցելելէ ետքը ապրիլ 7'ին, Աւետման տօնին, Դաշտ գիւղը կը պատարագէ։ Զատիկը՝ ապրիլ 25'ին Ագուլիս կ'անցրնէ, ուր և Նոր կիրակիին, մայիս 2'ին, եպիսկոպոս կը ձեռնադրէ, «զաֆէրէաջն Աֆաալէաց ղոէր Թաամայն», իր ուղեկիցը, «ծէբան աաաէբ Էջմիածնայ», որով Նախապէս յանուն Էջմիածնի վեղար առած ըլլալը կը հասկցնէ։ Նախավկայի վանքը կը մնայ 9 օր (ԿՐԵ. 77). անկէ կ'անցնի Երընջակ, և շրջակաները պտտելէն ետքը Նորէն Երնջակէ կը մեկնի Նախիջեւան և Աստապատ, ուր Մեծահրաշի կիրակէին, յունիս 6'ին եպիսկոպոս կը ձեռնադրէ Նոր-Ջուղայի միաբան Գէորգ Ասպահանցի, և Էջմիածնի միաբան Մելքոն Կաֆայեցի վարդապետները, և երրորդ մըն ալ Սղրակու Ս. Բարթողիմէոսի առաջնորդ, «ըստ խնդրոյ եկելոյն և վիճակին այնմիկ»։ Վերջապէս շրջանը լրացնելով յունիս 12'ին Հոգեգալստեան կիրակամուտին Էջմիածին կը մտնէ, և Իջման տեղւոյն առջեւ կ'աղօթէ «հաստատելով զանարատ բերան պէրծագանողէ յամենայն պատահարաց» (ԿՐԵ. 79)։

**1981**. Աբրահամ Կրետացի, իր պատմութեան մէջ շարունակ յոյժ ծերացեալ և տկարացեալ կը ներկայացուի (ԿՐԵ. 81), բայց հակառակ այդ ենթադրութեան միշտ շարժման, և ձմեռնային դժուարին և չարքաշ ուղեւորութեանց մէջ կը տեսնենք զինքը։ Մուղանի ուղեւորութիւնն ալ վերջինը չեղաւ. զի 1736 տարին չվերջացած ճանպորդութիւն մըն ալ ըրաւ Թավրէզ, շահին եղբօր և երկրին կողմնապետ Իպրահիմի մօտ։ Հրաւէր մը ստացած էր Մուղանէ դառնալէն քիչ ետքը, բայց «փէար և աշխաաէաւ է Թանադրէն» ըլլալուն համար չքմեղանք էր ներկայացուցած, և իր կողմանէ պատուիրակ ղրկած Թովմաս Ագուլեցի նոր ձեռնադրուած եպիսկոպոսը, որ պէտք եղածը կարգադրեր և կաթողիկոսին նոր ընծաներ ալ բերեր էր։ Այդ միջոցին էր որ Երեւանի մէջ կնքուած հաշտութիւնը, Օսմանեան և Պարսիկ տէրութեանց մէջ պաշտօնական դաշնագիրով մը վաւերացաւ 1736 սեպտեմբերին, և երկուց տէրութեանց սահմանագլուխները ճշդուեցան (ԺՈՒ. 340), ճիշդ ինչպէս էին Աֆղաններուն արշաւանքէն առաջ (ՏՊէ. 362)։ Նոյն ատեններ 1736 սեպտեմբերին Իպրահիմի հրաւէրը կրկնուեցաւ արքունական հրամանով, զոր Աբրահամ ստացաւ երբ չինութեանց համար Ծովհաննավանք գացած, և հոն «խօնացեաւ էր ղարաղար աէնդէա» (ԿՐԵ. 80)։

ՎԱՆՔԵՐՈՒ
ՊՏՈՅՏԸ

ԿՐԵՏԱՑԻՆ
Ի ԹԱՎՐԷԶ

Գործին խնդրին իմանալու համար Երեւան կ'իջնէ, պատրաստութեան համար էջմիածին կու գայ, չաբաթ մը Երեւան կը դառնայ, և անկէ հանդարտ ուղեւորութեամբ, Աստապատ և Մարանդ հանդիպելով Թաւրէզ կը հասնի հոկտեմբերի կէսին։ Իպրահիմ խանէ մեծ պատիւներ կը տեսնէ, 20 օր կը մնայ, և 15 կտոր նոր հրամանագիրներ կը ստանայ վասն ֆռանկէնց և կոր-ծանորաց և վասն եկեղեց, և այնպէս կը մեկնի էջմիածին դառնալ։ Հին-Ջուղա, և Նախիջեւան հանդիպելով նոյեմբեր 20'ին Ցղնակաց բարեկենդանի կիրակամուտին կը մտնէ Աստապատ, և անկէ ալ Խորվիրապ ուխտ ընելով միւս կիրակամուտին, նոյեմբեր 27'ին կը հասնի Մայրաթոռ։ Այս անգամ ալ կաթողիկոսական ճանապարհի խումբը 30 մարդ, և 32 ձի ու ջորի կը պարունակէ եղեր (ԿՐԵ. 89)։ Նկատողութեան արժանի է որ Նորէն ձմեռուան սկիզբը և եղանակին խանգարուելու միջոցին կատարուած է՝ ծեր և խօթագին կաթողիկոսին ուղեւորութիւնը։ Թաւրէզի մէջ Իպրահիմ խան ալ գիտեր է որ ի հիւանդութենէն փրկեցաւ և բժշկ-եալ է եղեր դէմքը (ԿՐԵ. 85), և թէ զերդոյն երեքօրեայ որդւոյ մեռելոյ տեսեր է ի թաղմերէոյ փնդէն, և մինչեւ իսկ հրաւիրակը յանդիմաներ է, թէ վասն էր բերեր զնայլեշայն, որով-հետեւ հիւանդ էր (ԿՐԵ. 81)։ Այսու հանդերձ ծեր ու հիւանդ հանդարտ չնստիր կաթողիկոսը, չարունակ չարժումի վրայ է, այնպէս որ Երեւանեցին ալ իրաւունք կ'ունենայ գրելու, թէ Քրս ընդ չոհին լինէր (ՋԱՄ. 30)։ Վերջին անգամ Մայրաթոռ դառնալէն ետքը, հազիւ հինգ ամիս եւս ապրած է Աբրահամ Կրետացի կաթողիկոսը. բայց մենք անոր մահուան վրայ չխօսած, իւր օրով կատարուած միւս աթոռներուն դէպքերը պիտի պատմենք։ Կրետացիին վրայ բաւելիքները այնպէս իրարու կապակցեալ էին, որ հնար չէր անոնք ընդհատել ուրիչ եղելութիւններ պատմելու համար։

**1982.** Կոստանդնուպոլսոյ աթոռին գործերը Կրետացիին կաթողիկոսութեան միջոցին, Նորէն մեզի կաթոլիկութեան երեսէն ծագած դժուարութիւնները կը ներկայեն, հակառակ Կոլոտ պատրիարքի խոհական ջանքերուն։ Բասն տարի կ'ըլլար յորմէհետէ Կոլոտ անօրինակ չարունակութեամբ պատրիարքական աթոռին վրայ կը մնար, ինչ որ իւր իմաստուն կառավարութեան արդիւնք պէտք է ըսենք, զի երբ մէկ կողմէն հայադաւան ե-

ԿՈԼՈՏԻ ԳՈՐԾԵՐ

կեղեցւոյ խնդիրը կը պաշտպանէր, միւս կողմէն կ'աշխատէր բուռն միջոցներէ զգուշանալ, և միտքերը լուսաւորելով համերաշխութիւն գոյացնել։ Սակայն նա երբ իւր բարեմտութեան սկզբունքին կը հետեւէր, կ'երեւի թէ Լատին քարոզիչներու չահադէտ ուղղութեան չէր թափանցեր։ Կռճիւին ամենէն մեծը Հայոց եկեղեցիներուն վրայ էր, ուր լատինամիտներ պաշտօնական պահանջներով պէտք էր դիմէին, և պետական տեսակէտով պէտք չէր խորչէին։ Այդ պատճառներով Հռոմն ալ չէր կրցած բացարձակ արգելք հռչակել, և երկդիմի պատգամով մէջէն ելլալ մտածած էր (§ 1938)։ Բայց Լատին աբեղաներու և իրենց եպիսկոպոսին չահը աւելին կը պահանջէր, իրենց հետեւորդներէն իրենք պէտք էր չահէին։ Եթէ Կոլոտ բուռն միջոցներէ կը խորչէր, բոլոր ազգայիններ նոյն միտքէ չէին, և լատինամիտներու յախորտանքէն կը գրգռուէին։ Անոնց գլխաւորներէն էր Շիրին Գալֆա, արքունի չինուածապետ, որ իւր դիրքէն օգտուելով եպարքոս Նասէհ Մէհէմմէտ փաչան գրգռեց, և սա նոր հրաման ղրկեց Կոլոտ պատրիարքին, իւր ժողովուրդին վրայ զգուշանալ, և իրեն անսաստողները ծանուցանել. բայց Կոլոտ բաւականացաւ լատինամիտներու գլխաւորները կոչել ու խրատել, որոնք չինեցաւ ըստ զո-րէին գործն խաղաղութեամբ (ՉԱՄ. Գ. 807)։ Սակայն Լատին եպիսկոպոսն ու աբեղաները չէին ներեր իրենցմէ հրապուրուածներուն՝ պատրիարքին մօտենալը։ Գաղղիական դեսպանը Վիլնէօվ՝ միտք կը յղանայ Հայ կաթոլիկական եկեղեցի մը կառուցանել տալ, որ մէկ կողմէն կաթոլիկ և միւս կողմէն Օսմանեան հպատակ նկատուի, և կաթոլիկութեան հրապուրուած Հայեր իրենց եկեղեցականներով ուզած հոգեւորական պաշտօններին կատարեն անոր մէջ։ Ասոնք կը հրաւիրուէին ծախքերուն համար հանգանակութիւն բանալ, և դրամական գումարներ

և կանացի զարդեր բաւականաչափ կը յանձնուէին դեսպանատան՝ լատինամիտ Հայերու կողմէ, ոմանք յօժարութեամբ և ոմանք ստիպմամբ, մինչև իսկ ընդդիմացողներուն մէջէն ոմանք ընդ բանիւ եղէն, և ոմանք չկեցան յորդորմանէ։ Հռոմէական պատմիչն է որ կը վկայէ սոյն լատինական ծայրայեղութեանց (ՉԱՄ. Գ. 807)։ Այդ բաները գաղտնի կը կատարուէին 1735 մայիսին մէջ։ Ծրագրուած խորհուրդը յաջողցնելու համար Վիլնէօվ մտածած էր, որ լատինամիտներ, որչափ ալ առանձին եկեղեցւոյ մէջ հոգևորական պաշտօն կատարեն, դարձեալ Հայոց տուցեն զեկեղեցական հօտս, այսինքն իրաւունքները վճարեն, ինչ որ կը նուազէր լատինամիտ եկեղեցականներուն օգուտը, և կը դադրեցնէր բուն Լատիններուն հասոյթը։ Լատին աբեղաներ հազիւ թէ կը տեղեկանան, ձայն կը բարձրացնեն, որ եթէ տասցեն առանձինն եկեղեցի, և ու եկեսցեն ի մեզ, մեք դատարկ մնամք։ Նորէն հռոմէական պատմիչէն կը քաղենք այդ պարագաները, և աւելորդ կը դառնայ խորհրդածութիւն աւելցնել, թէ ինչ էր Լատին քարոզիչներուն նախանձայուզութեան մեծ շարժառիթը։ Ազգայիններն ալ կը գրգռուէին, եւս առաւել պետութիւնը կը յուզուէր իրեններուն օտար պետութեան հովանաւորութեան ներքև անցնելուն վրայ. հետազօտութիւններ կը կատարուէին, քանի մը գլխաւորներ կը ձերբակալուէին, կը բանտարկուէին, և կը տուգանուէին։ Դեսպանը իւր ծրագիրէն ետ կը քաշուէր. Պարսից հետ պատերազմը իբր արգելք կը ցուցնէ, և գործը խաղաղութեան միջոցին կը թողու (ՉԱՄ. Գ. 808), բայց չէ ըսուած թէ հաւաքուած գումարները տէրերուն դարձուած ըլլան։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ**

1983. Հայերուն ճակատագիրն էր կարծես, նոյն իսկ քրիստոնեայ ազգերէ խանգարուած տեսնել իւր ներքին խաղաղութիւնը, և անդադար մրցիլ ու ճգնիլ անոնց քսութեանց և գրգռութեանց դէմ։ Երբ Լատիններ մէկ կերպ զինքը կը յոգնեցնէին, ուրիշ կերպով մըն ալ Յոյներ ասպարէզ իջած էին։ Ասոնց ճիգերը Երուսաղէմի Հայոց սեփականութեանց և իրաւանց դէմ էր. կ'ուզէին Հայերը ամէն ստացութիւններէ զրկել, ոչ միայն արարողական այլև կալուածական իրաւունքներէ կապտել, և նոյն իսկ Ս. Յակոբեանց մայրավանքն ալ իրենց ձեռքը անցընել։ Հէքիմզատէ Ալի եպարքոսին օրով յաջողութիւն չէին գտած, բայց կրցան չահեցնելով չահիլ Կիւրճի Իսմայիլ եպարքոսը (§ 1968)։ Յոյներուն աչքին փուշ եղած էր Հէքիմզատէի օրով Կոլոտի առած նոր հրովարտակը, որով կը հաստատուէին Հայոց բոլոր իրաւունքները, սեփական սրբավայրերը, լուսահանութեան արարողութիւնը, և Ասորւոց ու Եգիպտացոց ու Եթովպացոց՝ Հայերուն հետևւակ ըլլալը։ Երբ հաշտութեան խօսքեր կ'ըլլային, Յոյներ համարձակ կ'առաջարկէին, զայն հրովարտակ, զոր առեալ է վերջին անգամ, այրեսցէ ի հուր առաջի աչաց մերոց (ԱՍՏ. Բ. 40)։ Կիւրճի Իսմայիլի եպարքոսութիւնը իրենց քաջալերութիւն տուաւ, զի զայն չատ դիւրամէտ գտան անձնական շահերու փասւտին։ Երկու Յոյն պատրիարքներ, 18 մետրապոլիտներ, բազմաթիւ իշխանաւորներ, գրով դիմեցին, թէ ժառանգութիւն սուրբ տեղեաց առանձնեալ է Յունաց, թէ Հայերը եկամուտ են, Ս. Յակոբեանց վանքը Յոյներուն է, և Հայեր խաբէութեամբ իւրացուցած են, և թէ ամենայն աղէտք որք եղանէին յԵրուսաղէմ, դարձեալ հնազանդել դարձուցանել Յունաց։ Այս գիրը չուտով ընդունելութեան արժանացաւ, և իբրև Հայոց խաբէութեան հեղինակ Սեղբոս և Մելիտոն ամիրաներ բանտարկուեցան։ Հայեր բողոքեցին, բայց Յոյներ աւելի բազմութեամբ և աղմուկով եպարքոսին դիմեցին։ Հայեր Մահմուտ սուլտանին դիմեցին, բայց գործը եպարքոսին թողուեցաւ, և թագաւորական հրաման ելաւ, Հայոց տրուած հրովարտակը ետ առնել. յատուկ զինակիր ալ ճամբայ հանուեցաւ Երուսաղէմ որ հրովարտակը ետ առնէ և բերէ, և Յոյներուն պահանջները գործադրուէին։ Մինչև իսկ Սեղբոսի և Մելիտոնի գլխապարտութեան լուրեր լսուեցան։ Հայեր դժուարին ճգնաժամին մէջ, ամէն տեսակ զոհողութեանց ենթարկուեցան. իրենք ալ կողմնակիցներ չահելու համար բանի մը չի խնայեցին. բայց թերևս արդիւնք չունենային, եթէ ներքինապետին և եպարքոսին մէջ ծագած գժտութեան հետեւանօք, Կիւր-

ճի Իսմայիլ վեց չաբաթէն պաշտօնանկ չըլլար և չաքսորուէր, և անոր հեռանալէն 16 օր ետքը Խաւէիտ Մէհէմմէտ փաշա եպարքոսութեան չկոչուէր։ Անոր առաջին գործերէն մին եղաւ, նոր զինակիր մը ճանպայ հանել, առաջինը ետ կոչելու, և Հայոց հրովարտակը իրենց ձեռքը թողլու (ԱՍՏ. Բ. 41—43), մինչեւ որ կատարեալ քննութեամբ պատշաճը տնօրինուի։ Այդ առթիւ բանտարկեալ ամիրաներն ալ արձակուեցան։ Թէպէտ առժամեայ հանդարտութիւն մը տիրեց. բայց հիմնական կարգադրութիւն չէր եղած։ Ցոյներ չէին կասած իրենց յաւակնութիւններէն, Հայեր չէին ազատած պաշտօնական ճիգերէն։

1984. Առանց ուզելու այդ նշանաւոր վէճին մանրամասնութեանց մտնել, բաւական կը սեպենք գործին հոգին և գլխաւոր կէտերը բացատրել։ Կոլոտ Կ-Պոլսոյ և Շղթայակիր Երուսաղէմի մէջ ամէն ճիգ կը թափէին Հայոց իրաւունքներուն ջատագովութեան։ Կ-Պոլսոյ մէջ պէտք էր կառավարութիւնը նպաստաւոր դարձնել, Երուսաղէմի մէջ պէտք էր զօրաւոր փաստեր կազմել հին հրովարտակներէ քաղելով։ Շղթայակիր իրեն մասը լիովին պատրաստեց, տեղական իշխանութիւններուն հաստատել տուաւ, բնիկներուն վկայութիւնները վաւերական գիրերու վերածեց. ուզեց ալ անձամբ Կ-Պոլիս երթալ, բայց միաբանութիւնը չուզեց որ հեռանայ, ուստի չատացաւ Կոլոտին յանձնարարութիւններ ընել, որ ինչչափ որ պէտք է պարտք ընէ և ծախսէ, վստահացնելով թէ վճարման համար [illegible]։ Այդ առթիւ Յակոբ Նալեան նորէն Կ-Պոլիս դարձած պիտի ըլլայ, Շղթայակիրին յանձնարարութիւնները Կոլոտի հաղորդելու և գործակցելու։ Բայց աւելի նշանակելի օգնութիւն մը եկաւ Հայոց կողմը զօրացնել։ Ցոյներուն յաւակնութիւնն էր Երուսաղէմի սրբավայրերուն և պաշտամանց միակ տէրը դառնալ, ինչ որ Լատիններուն ալ դիրքը կը վտանգէր, թէպէտ անոնց անունը տրուած չըլլար։ Լատինները զգացին իրողութիւնը, և կանխահոգ զգուշութեամբ պէտք

տեսան Հայերուն միանալ և Հայերուն օգնել, որպէսզի անոնց ճզմուելէն ետքը կարգը իրենց չգայ։ Ասկէ յառաջ եկաւ պատրիարքին և դեսպանին միջեւ մերձաւորութիւն մը. պէտք եղաւ որ Լատիններ իրենց չափազանց միամոլութեան ալ չափ դնեն, և իրենց հետեւողներուն ալ օրհնելըն, զի մի եւս ժողովին և համարձակ երթիցեն յեկեղեցի Լատինացւոց, և երբեմն գնասցեն յեկեղեցի Հայոց։ Այդ մերձեցումները տեղի ունեցան 1736 տարւոյ սկիզբները (ՉԱՄ. Գ. 811), և կրօնապէս անհնար սեպուած բաներ, հնարաւոր դարձան, երբոր անձնական շահը խօսեցաւ։ Ինչչափ ալ այդ նպաստաւոր պատրաստութիւնները կրնային Հայոց կողմին վստահութիւն ներշնչել, սակայն Կ-Պոլսոյ մէջ մտածեցին, որ անհրաժեշտ է Շղթայակիրին ներկայութիւնը, թէ իբր գործին տէրը, և թէ հեղինակութեամբը և արժանիքովը զօրաւոր ազդակ մը գործին վճռական յաջողութիւնը ձեռք բերելու։ Այդ նպատակով պատրիարքը ազգայիններու հետ գիր մը ուղղեց Շղթայակիրին ամենայն յարգանօք, որ թէպէտ ծերացած, բայց աթոռին սիրոյն յանձն առնու Կ-Պոլիս գալ։ Նամակը 36 ստորագրութիւն կը կրէ, և պատրիարքին հետ ստորագրած են, 6 աւագերէցներ, 4 տիրացուներ, 2 եկեղեցպաններ, 3 չէլէպիներ, և 20 ազգային գլխաւորներ։ Նամակը գրողներ կը նախատեսեն թէ Շղթայակիր պիտի կարենայ առարկել, [illegible], և կը պատասխանեն թէ [illegible] (ՄԿՐ.)։ Նամակը 1736 տարեթիւ ունի, բայց ամսաթիւ չունի, միայն զատկին երկրորդ օրը, ապրիլ 26'ին, Երուսաղէմի եկեղեցւոյն մէջ կարդացուած ըլլալէն (ԱՍՏ. Բ. 48) կը հետեւի, թէ տարւոյն սկիզբները գրուած է։

1985. Այս նամակին վրայ Շղթայակիր որոշեց Կ-Պոլիս երթալ, ինչպէս արդէն ալ յօժարած էր. իւր բացակայութեան միջոցին գործերուն հսկելու համար տեղապահ, փոխանորդ, գանձապետ և թարգման նշանակեց՝ կարողագոյն միաբաններէն (ԱՍՏ. Բ. 48), Գար-

րիէլ, Թէոդորոս, Յովհաննէս, և Պօղոս վարդապետները (ԱՍՏ. Բ. 60—61)։ 1736 մայիս 6'ին, Նոր կիրակէի հինգշաբթին Երուսաղէմէ մեկնեցաւ ուխտաւորներու բազմութեան հետ, և 15'ին Յոպպէէ նաւ մտաւ, Կիպրոս հանդիպեցաւ, բայց անկէ անդին փրկուելու ի մրրկէ ծովու և ի դողդոջմանէ ջրոյ, պարտաւորուեցաւ ուղեկիցներուն հետ ցամաք ելլալ յունիս 5'ին, Փինիքէ (Phinéka) նաւահանգիստը, Անատոլիայի արեւմտակողմը, և ցամաքէն յառաջել դէպի Կ-Պոլիս։ Բունդարպաշի կոչուած տեղը անընդով հիւանդացաւ, և չատ նեղութեամբ Կուտինա հասաւ, ուր 21 օր մնաց, և ուր եկան զինքն դիմաւորել և հոգալ, Կոլոտէ յղուած իւր չորս յառաջադէմ աշակերտներէն՝ Յարութիւն Հեզահոգի, Յակոբ Նալեան, Սահակ Ահագին և Յակոբ Պալաթցի վարդապետները։ Կուտինայի մէջ քիչ մը կազդուրուելով, և Պրուսայի մէջ առաջնորդ Ներսէս Պալաթցի եպիսկոպոսէն հիւրասիրուելով, այն որ պատրիարք եղած էր ժամանակին (§ 1867), ողջամբ կը հասնի Կ-Պոլիս 1736 յուլիս 23'ին, Վարդավառի բարեկենդանին նախընթաց ուրբաթ օրը։ Անգամ մըն ալ կը նորոգուէր այն յուզումնալից տեսարանը, որ տեղի ունեցած էր Շրղթայակիրին առաջին անգամ Կ-Պոլիս եկած ատենը, երբ երկու սրտակից և սիրակցորդ եղբայրներ իրարու կը փարէին։ Կոլոտ, 21 տարիէ իվեր պատրիարք, խոնարհամիտ կը մեծարէր իւր հայրապատիւ ընկերակիցը (§ 1926)։ Շղթայակիրին գալուստը Լատիններու կողմէ ալ գնահատուեցաւ, իբրեւ իրենց ալ նպաստաւոր պարագայ մը, և Վիլնէօվ դեսպան երկու լատին կրօնաւորներ յղեց յատկապէս անոր բարիգալուստ մաղթելու, որուն շնորհակալութիւն մատոյց Շղթայակիրը՝ յայտարարելով, թէ իբր հիւանդ՝ առողջութիւն, և իբր նեղեալ՝ մխիթարութիւն գտնելու եկած է, և դեսպանին ալ աջակցութիւնը կը խնդրէ (ՁԱՄ. Գ. 811)։ Արդէն Հայերու և Լատիններու յարաբերութիւնները քաղցրանալու երես կ'առնէին, և Կոլոտ յատուկ նամակներ ալ գրած կ'ըսուի Գաղղիոյ Լուդովիկոս ԺԵ թագաւորին և Հռոմի Կղեմէս ԺԲ պապին (ՁԱՄ. Գ. 811), թէպէտ պատճէնները տեսնուած չեն։ Գրիգոր իջեւանած էր Իսկիւտար Երուսաղէմապատկան վանատունը, բայց անշուշտ յաճախ էին երկու պատրիարքներուն տեսակցութիւնները, աւելի ևս իրենց ունեցած մեծ գործը աւարտելու համար։ Իրաւ՝ տագնապալից վայրկեանները անցած էին, և Յոյներ ալ՝ կարծես թէ հանդարտած, գոնէ անգործ էին, Էսատ Մէհէմմէտ եպարքոսին բռնած ուղղութենէն ցնցուած. բայց խնդիրը կը մնար, և միայն քննութենէն ետքը վճռաբար պիտի վերջացուէր, և մինչեւ որ գործը չլրանար, վստահիլ անհնար էր։ Սակայն առժամեայն ալ իբր վերջնական կը նկատուէր հասարակ ժողովուրդէն, այնպէս որ նորէն Հայի ու կաթոլիկի բանավէճները կը սկսէին մէջտեղ գալ, և մանաւանդ ամավերջի հանդիսական օրերը առիթ կ'ընծայէին տարբեր տօնակատարութեանց և փոխադարձ մեղադրանաց։ Մինչեւ իսկ Լատիններէ ոմանք դեսպանին ականջը հասուցին՝ թէ Շղթայակիրը Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյն մէջ, ուր Աստուածայայտնութեան տօնին նախագահած էր, իբր թէ ի յատենի խորան հայհոյեաց զլուսաւորիչն Լատինաց (ԱՍՏ. Բ. 49)։ Բայց Վիլնէօվ, այլ խօսիմ, և մանաւանդ Լատին կրօնաւորներուն քսութեանց վարժ, և ծանրագոյն խնդիրներու կարգադրութեան հետամուտ, ոչ միայն այդ խօսքերուն կարեւորութիւն չտուաւ, այլեւ հանրութեան միտքը չինելու համար հացկերոյթ մը տուաւ դեսպանատան մէջ կիրակի օր, 1737 փետրուար 3'ին (ՁԱՄ. Գ. 811), և հրաւիրեց Շղթայակիր և Կոլոտ պատրիարքները, Էջմիածինի նուիրակ Պետրոս Հռոմկլայեցի վարդապետը, Թիւթիւր մականուանեալ, և Հայոց մեծամեծներէն քանիներ։ Փոխադարձ հաչտութեան խօսքեր եղան, պատրիարքներ առաջարկեցին Հայոց եկեղեցին երթալու արգելքը վերցնել տալ, դեսպանը խնդրեց նզովքի չարականին երեք տուները չերգել, և փոխադարձ հաւանութեամբ մեկնեցան (ՁԱՄ. Գ. 811)։ Արդէն չարականի խնդիրը Կարապետ կաթողիկոսի օրէն պաշտօնապէս կարգադրուած էր (§ 1953)։

1985. Պզտիկ պարագաներ երբեմն մեծ խնդիրներու դուռ կը բանան, և ջնջին դէպքեր կարեւոր տագնապ մը կը ստեղծեն.

*բայց պէտք չէ կարծել թէ յանկարծ կը ծընին։ Քիւթիւր Նուիրակը, բնութեամբ անհանգիստ, և ձգտումներով անյագ, անտարբեր աչքով. չէր կրնար տեսնել Կոլոտի այդչափ ատեն պատրիարքական աթոռին վրայ մնալը, որ ուրիշներուն փափաքները կը խափանէր։ Առիթ մը, պատճառանք մը կը փնտռէր, և կարծեց զայն գտնել, զինքն անիրաւուած ցուցնելով Կոլոտի երեսէն, որովհետեւ Վիլնէօվ վերոյիշեալ հացկերոյթէն ետքը մէկ մէկ ծոցի ժամացոյց նուիրած էր երկու պատրիարքներուն, իսկ իրեն չէր տուած։ Այնպէս ուզեց մեկնել, իբր թէ Մայրաթոռը արհամարհուած էր Կոլոտի սադրանօք, զի թէպէտ դեսպանին և Շղթայակիրին ալ մեղադրանքներ կը խօսէր, սակայն գլխաւոր յարձակումը Կոլոտի դէմ էր, որուն իյնալէն կրնար օգտուիլ։ Քիւթիւր, Էջմիածինի նուիրակ, կ'երեւի իւր նախորդէն՝ Սիմէոն Երեւանեցիէն ժառանգութիւն առած էր Կոլոտի դէմ այդ ամբաստանութիւնն ընելու* (§ 1945)։ *Ինչպէս ալ ըլլայ, Մայրաթոռի անունով առք հանեց Աչէ-եւցէ կոչուած մեծամեծները* (ՁԱՄ.Գ.812), *որով կ'իմացուէին ներքին գաւառներու բնիկները, որոնք նորէն առանձնայատուկ դիրք մը կազմած էին, զի իրենց նահանգը Երեւանով և Էջմիածինով Պարսից տիրապետութեան անցած էր* (§ 1975)։ *Դեսպանն ալ Քիւթիւրի լեզուագարութիւնները լսելով Կոլոտէ կը պահանջէր, զայն զսպել և Կ-Պոլիսէ հեռացնել։ Ժողովուրդին մէջ ալ, ինչպէս բնական է, երկպառակութիւններ կ'աճէին, և Կոլոտը պատրիարքութենէ վար առնելու կողմնակցութիւն մը կը կազմուէր։ Շղթայակիրը տեսնելով որ գժտութիւնները կրնան ամէն գործերու համար ձախողութիւն յառաջ բերել, չնայելով որ տկար ու հիւանդ էր Իւսկիւտարի վանատան մէջ, պէտք տեսաւ պատգարակով Մայրեկեղեցի իջնել։ Ժողովուրդն ու մեծամեծները հաւաքեց, քարոզեց, յորդորեց, խրատեց, և երկուքնուն միատեղ քաշուելու ենթադրութիւնը զգացուց, և վերջապէս յաջողեցաւ խաղաղութիւնը հաստատել, Արեւելցիներուն ալ սխալ քայլերնին զգացնել, և այդպէս փակուեցաւ այդ ներքին միջադէպը, որ աննշան պարագայէ մը սկսելով կրնար մեծամեծ հետեւանքներ ունենալ։ Քիւթիւր ալ իւր ձախողիլը տեսնելով,* [illegible]*, և Կոլոտ կրցաւ դեսպանը համեցնել, որ միջադէպին կարեւորութիւն չտայ, և հաճի Քիւթիւրին ըրածը* [illegible] (ՁԱՄ.Գ.812)։ *Վիլնէօվ դեսպան գոհ մնաց միջադէպին փակուելուն, որով Կոլոտի դիրքը կ'ամրանար, և Երուսաղէմի խնդիրին մէջ Լատիններուն կողմն ալ կ'ապահովուէր Յոյներու յաւակնութեանց դէմ։ Դեսպանը* 1737 *մարտի սկիզբները հանդիսաւոր կերպով Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցին կ'այցելէր ընտանիքով, դեսպանատան պաշտօնեաներով և Լատին մեծամեծներով մէկտեղ, որպէսզի լատինամիտներ ալ Հայոց եկեղեցիներէն չխորշին։ Այն տարի Բուն բարեկենդանը փետրուար* 20'*ին էր հանդիպած։ Աւագ ուրբաթի թափօրին, ապրիլ* 8'*ին, դեսպանը Ղալաթիա կ'իջնէր՝ Լատինաց Ս. Բենեդիկտոս* (Saint-Bénoit) *եկեղեցին, և փափաքելով Հայոց Ս. Լուսաւորչի թափօրը տեսնել, խնդրեց որ մինչեւ հոն գայ, և Լատին եկեղեցականութեան կողմէն* [illegible] *և գալարափողովք պատուասիրութիւն ընել կու տար։ Թէպէտ երկու կողմերուն նախանձայոյզները, դեսպանը Հայ և պատրիարքը Լատին եղած կ'ըսէին* (ՁԱՄ.Գ.813), *սակայն ընդհանուր տպաւորութիւնը նպաստաւոր էր։ Լատիններ՝ և գլխաւորապէս դեսպանը, Հայոց գործակցութեամբ, Երուսաղէմի մէջ իրենց դիրքը ապահովել կ'աշխատէին, իսկ Հայեր, և գլխաւորապէս պատրիարքը, ներքին կուսակցութեանց ջնջումը կը նախատեսէին։*

**ՔԻՒԹԻՒՐԻ ՄԻՋԱԴԷՊԸ**

**1987**. *Այդ միջոցին տիրող հաշտ ընթացքը, եթէ Կոլոտի տեսութեամբ ներքին խաղաղութեան և հանդարտութեան պիտի ծառայէր, սակայն միւս կողմէն դիւրութիւն և քաջալերութիւն կ'ընծայէր լատինականութեան հետեւող Հայ եկեղեցականներուն՝ իրենց գործունէութիւնը տարածելու Հայոց մէջ, և օգտուելով Հայոց պատրիարքարանի մեղմ ընթացքէն, և ազգայնոց՝ Լատիններու չըփուելէն, և ուսման ու զարգացման հետեւե-*

**ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ԸՆԹԱՑՔԸ**

*լու փափաքէն, հետզհետէ կ'ընդարձակէին իրենց գործունէութիւնը։ Այդ նպատակին աւելի կը ծառայէին Մխիթարեան և Անտոնեան նորակազմ միաբանութեանց անդամակիցները, որք անդստին այդ ժամանակէն մոլեռանդ լատինականութենէ տարբեր ուղղութիւն մը ընդգրկած էին, քարոզելով և բացատրելով թէ Հայոց եկեղեցին և հայադաւանութիւնը, Հռոմի եկեղեցիէն ու հռոմէականութենէ օտար չեն, և հիմնապէս միևնոյն են, միայն ինչինչ թիւրիմացութիւններ կան, որոնք Հռոմի դիտողութեան առիթ կու տան, և անոնք ուղղել և փոփոխելն ալ ոչ միայն հայադաւանութեան իսկութիւնը չխախտեր, այլև մեծապէս օգտակար կ'ըլլայ, պապութեան հզօր պաշտպանութիւնը և եւրոպական տէրութեանց հովանաւորութիւնը ապահովելով։ Կ'աւելցնէին ևս թէ Հայութեան անկեալ և տառապեալ վիճակն ալ վերականգնութիւն կը ստանայ, մտաւորական զարգացմամբ և նիւթական բարօրութեամբ։ Մխիթար կրկնակի միջոցներով այդ ուղղութեան կը ծառայէր։ Վենետիկի դիրքէն և դիւրութիւններէն օգտուելով հետզհետէ կաթոլիկամիտ հրատարակութիւններ կ'առատացնէր և ազգին մէջ կը ցրուէր, Մայրաթոռի հայրապետին անունն ալ անոնց ճակատը դրոշմելով, աւելի ընդունելի ցուցնելու համար։ Գիրքի կարօտ և ուսման ծարաւի Հայեր՝ մեծաւ փափաքանօք կը ստանային այդ հրատարակութիւնները, և անուղղակի կը հրապուրուէին։ Միւս կողմէն Մխիթար իւր աշակերտներէն քանիները Արևելք կը ղրկէր, որ այդ միջոցով քարոզութիւններ ընեն, ինչպէս եղան Եղիա Մարտիրոսեան, Յովհաննէս Սիմոնեան, Մանուէլ Խուպիարեան, և Ստեփանոս Պետրոսեան միաբանները կամ հայրերը, որոնք Կ-Պոլիս և գաւառներ շրջեցան։ Մինչև իսկ կը պատմուի թէ Գաբրիէլ Կարնեցին՝ Ջահկեցի Ունիթորներու դէմ վիճած ըլլայ, Հայ եկեղեցւոյ մէջ պաշտուած խորհուրդներուն վաւերականութիւնը պաշտպանելու* (Մխի. 337)։ *Այդ շրջանակէն դուրս կը թողունք Լեհական և Մաճառական սահմաններուն մէջ կատարել տուած շրջագայութիւնները, զի այն գաղութներ Յովհաննեանէ ետքը պաշտօնապէս անջատուած, և Արևելքի հետ յարաբերութիւննին կտրած էին* (§ 1819)։ *Մխիթարեան միաբանութիւնը այս կերպով իւր նախաքայլերը կը հաստատէր ուսումնական և կրօնական ասպարէզներու մէջ։ Բայց տակաւին ուսումնականը՝ զուտ գրական և հայկաբանական շրջանակին մէջ չէր, այլ իբրև կրօնականին ձեռնտու միջոց մը կը գործածուէր։ Եթէ Վենետիկի մէջ Մխիթարի հոգածութեամբ մինչև* 1737 *հրատարակուած գիրքերուն ցուցակը զննենք, անոր մէջ աւելի կրօնական և հոգևորական նիւթերու կը հանդիպինք* (ՏՊԱ. 264—268), *քան թէ այն ընտիր երկասիրութեանց, որոնք Հայ լեզուին և մատենագրութեան կեանք տուին ապագայ ժամանակներու մէջ։ Բացառիկ յիշատակութեան արժանի է Աստուածաշունչի պատկերազարդ և շքեղ տպագրութիւնը* 1733*'ին, բայց այն ալ Ոսկանեան օրինակն էր լատինականով աղաւաղուած* (§ 1746), *և ոչ նախնեաց ընտիր թարգմանութիւնը։*

ԱՆՏՈՆԵԱՆՑ ԳՈՐԾԵՐԸ

**1988**. *Անտոնեանք Արևելքի մէջ ծնած ըլլալով աւելի մօտէն կը շփուէին ժողովուրդին հետ, և առաւելապէս Ասորիքի, Միջագետքի և Կիլիկիոյ թեմերուն հետ, ուսկից էին իրենք ալ, և ուր լատինասիրութիւնը հին յիշատակներ կը պահէր Ռուբինեանց կամ Լուսինեանց օրերէն։ Այդ նպատակին կը նպաստէր Աբրահամ Արծիւեան եպիսկոպոսին ներկայութիւնն ալ, զոր իրենց վանքը փոխադրած էին իբրև հիւր* (§ 1940), *բայց միանգամայն իրենց թեմակալ առաջնորդը կը ճանչնային, զի իրենք Բերիոյ վիճակէն էին, և նա Բերիոյ առաջնորդ կը սեպուէր։ Արծիւեան առաջնորդական իշխանութեամբ՝ Անտոնեաններէն քանիները կը ղրկէր ի ծածուկ այց առնել և մխիթար լինել Բերիոյ լատինամիտներուն, ինչպէս ինքն կը գրէ* 1727 *սեպտեմբերին գրած նամակովը* (ԱՆՏ.)։ *Այդ ղրկուածներուն մէջ առաջնակարգ գործունէութիւն ունէին Յակոբ Յովսէփեան և Իսահակ Բարսեղեան հայրերը* (§ 1940), *որոնք իրենց կոչման մէջ կատարելագործուելու համար,* 1730*'ին նախ Հռոմ կ'երթային պապին բացատրելու՝ ժա-*

մանակին Նամակով հաղորդած ձեռնարկնին (§ 1939), և անկէ Վենետիկ կ'անցնէին, Խաչատուր Կարնեցի վարդապետին մօտ ուսանելու, և պէտք ունեցածնին համբարելէ ետքը 1732'ին հրաման կը ստանային Կ-Պոլիս անցնիլ, և անկէ ալ Անկիւրիա կը ղըրկուէին, իբր հռոմէադաւանութեան քարոզիչներ։ Անկիւրիա ալ հասած էին կաթոլիկութեան ձայները, և հրապուրեալներ ալ կային. որոնք [illegible] կը կարծուէին, բայց չունէին իրենց ուղղութենէն քահանայ, և եթէ երբեք պատահմամբ հանդիպէին ալ, գոնէ [illegible] հռոմէադաւան քահանայի երես տեսած չէին (Մխի. 327)։ Այդ պէտքը լրացնելու նպատակով հայր Յակոբ և հայր Իսահակ՝ Լատին եպիսկոպոսին կարգադրութեամբ Կ-Պոլսէ կ'երթային Անկիւրիա, 1733'ին ատեններ, ուր կը մնային երեք տարի, Անկիւրիոյ կաթոլիկութեան թէ ոչ հիմնադիրները, գոնէ կազմակերպիչները ըլլալու (ԱՆՏ.)։ Ասոնց յաջողութեան պատճառները պիտի տեսնենք նախ այն հաշտարար ընթացքին մէջ որուն կը հետեւէր Կոլոտ, անուղղակի ասպարէզ թողլով սպրդող քարոզիչներուն, և երկրորդ այն ձեւին մէջ, զոր որդեգրած էին Մխիթարեան և Անտոնեան միաբանները, դիւրամատոյց ընծայելով հռոմէականութեան ընդունելութիւնը, և բաւականանալով թեթեւացած յայտարարութիւններով (§ 1987)։ Այդ երեւոյթներուն առջեւ Հայ եկեղեցականներ չէին դժուարիր իրենք ալ նոյն կերպ մտածելնին յայտարարել, մանաւանդ եթէ դիւրահաւան և շատ խորունկը չթափանցող անձերու վրայ փորձուէր յիշեալ կերպը։ Այս տեսակէն եղած կ'երեւի Մովսէս Շիրինեան եպիսկոպոս, Գաղատիոյ առաջնորդը, որ սիրով կ'ընդունէր Հռոմէ եկող և լատինական ուսման ձեւերով կերպարանուած երկու եկեղեցականները, և ազատ կը թողուր անոնց գործունէութիւնը, և մինչեւ իսկ համամտութեան յայտարարութիւն կու տար (ՋԱՄ. Գ. 813)։ Անտոնեան երկու միաբաններուն տեսութեամբ՝ Մովսէս առաջնորդ և իրեն հետեւող եպիսկոպոս մը և չորս վարդապետներ, [illegible] տուած են (ԱՆՏ.), սակայն պատճէնը չունինք, և Մովսէս իւր համոզումէն տարբեր բան մը յայտարարած չի կրնար ըլլալ։ Նա ոչ Հայ եկեղեցիէ զատուեցաւ, և ոչ իւր դիրքը կորսնցուց, և ոչ իր վրայ դիտողութիւն հրաւիրեց, և իւր աթոռին վրայ խաղաղութեամբ վախճանեցաւ և Հայոց կողմէն պատուով թաղուեցաւ 1735'ին (ՋԱՄ. Գ. 813)։ Անոր յաջորդ ուղարկուեցաւ Յակոբ Նալեան, բայց Կոլոտ չուզելով զայն իրմէ հեռացնել, փոխանորդ նշանակուեցաւ Պետրոս Պահատուրեան վարդապետ, բնիկ Անկիւրիացի, բայց ուղղութիւնը միեւնոյն չմնաց։ Եղիա Կիւլապեան Գաղատացի Ունիթորին հանած խնդիրները, խռովութեանց պատճառներ տուին, և Յակոբ ու Իսահակ Անկիւրիան թողուցին ու հեռացան 1736'ին։ Բայց որովհետեւ հռոմէադաւանութեան հետեւողներ բաւական բազմացած էին Անկիւրիոյ մէջ, ներքին կռիւներ ծագեցան, և ժողովուրդը բաժնելու ձեռնարկներ եղան, և Անկիւրիոյ եօթն եկեղեցիներէն չորսը հռոմէականներու ձեռքը անցան (ՋԱՄ. Գ. 814)։ Կոլոտ պատրիարք՝ նկատելով Երուսաղէմի խնդիրով կազմուած համերաշխական ձգտումները (§ 1986), եկեղեցիները ետ առնելու բուռն ձեռնարկներ չըրաւ, այլ Պահատուրեանի տկարութիւնը տեսնելով, և Նալեանի հեռացումն ալ չուզելով, Սարգիս Սարաֆեան եպիսկոպոսը յղեց (§ 1973), որ Կեսարիոյ առաջնորդութիւնը թողած Կ-Պոլիս կը դեգերէր։ Սարաֆեան, զոր այդ ժամանակէն իբր յայտնի հռոմէադաւան եղած հռչակել կ'ուզուի, հարկաւ հռոմէականներ զսպելու չէր ղըրկուեր, եթէ այնպէս ճանչցուած ըլլար։ Ի զուր է իւր ներբողաբանին ըսելը թէ եկեղեցիներուն հռոմէականաց անցնիլը [illegible], քանի որ եկեղեցիները ետ առնելու պաշտօնը [illegible] (ԳԱԼ. 39)։

**ՀԱՅՈՑ ԿԱՑՈՒԹԻՒՆ**

**1989**. Երբ այդ եղելութիւններ Տաճկաստանի մէջ կը կատարուէին, անդին Պարսկաստանի տիրապետութեան ներքեւ կը շարունակէին Աբրահամ կաթողիկոսին և Նատիր շահին յարաբերութիւնները, որոնց վերջին արտայայտութիւնն եղաւ Աբրահամի Թավրէզ երթալը (§ 1981)։ Կրետացիին կաթողիկո-

ութեան ժամանակին դէպքերը քաղեցինք իւր իսկ թողած պատմագրութիւններէն, և նկատողութեան արժանի կը գտնենք, որ ինքն ալ, որ Տաճկահայ ծնած ու ապրած էր, և հանդիպմամբ միայն Պարսկահայ դարձած, բնաւ Տաճկահայերուն գործերով չէ զբաղած։ Կոնդակ մը միայն ունինք իրմէ, Մուղանի դաշտէն գրուած 1736 փետրուար 20'ին, և Ցարութիւն ու Սեդրոս, Աստուածատուր ու Պաղտասար ամիրաներուն ուղղուած (ԿՐԵ. 93), ուր Նատիրի մեծութեանց ու հարստութեանց և իւր առած նուէրներուն պատմութիւնով կը զբաղի, առանց ժողովուրդին վիճակովը հետաքրքրուելու։ Իւր գրելու սկսած դօժօռնեան փեփքօյն ալ Նիկողայոս Արմաշցի քահանային հետ կը ղրկէ Պոլսոյին, օրդօսյօ ենօյ հասցէով, և կանխապէս կցկին և եզնէկին նամակներ ալ գրած ըլլալը կը յիշէ, որոց պարունակութիւնը կ'երեւի թէ տարբեր չէր։ Կրետացին այնպէս գրաւուած էր իւր Նատիրով, որ անկէ դուրս բան չէր տեսներ աշխարհի վրայ, և ինչ աղէկութիւն ալ որ կը բաղձար իւր ազգին, և ինչ պաշտպանութիւն որ կը փնտռէր իւր եկեղեցւոյն, Նատիրին շնորհքներէն դուրս չէր յուսար և չէր որոներ։ Իրաւ իւր ժամանակը արդէն ջնջուած էր հայկական շարժումը (§ 1956), բայց կ'երեւի թէ յիշատակն ալ կորած էր, կամ թէ յիշելն ալ վտանգաւոր էր, որ Կրետացին Մուղանի ուղեւորութեան մէջ հայկական պատերազմներուն ասպարէզ եղող ձորերէն ու դաշտերէն ալ անցնելով, բնաւ անոնց մասին միտք չդարձներ։ Հայ գունդերուն վերջին բեկորներ Ռուսական ծառայութեան զինուոր դարձած էին։ Լոկ Լազար Խրիստոֆորով զօրավարին մասին յիշատակ մը կը գտնենք 1734 յունիս 26'ին (ԵՁՆ. 451)։ Նոյն թուականին Իվան Կարապետով գնդապետն ալ՝ Հայերուն Ռուսաստանի մէջ հաստատուելուն և բազմանալուն հետամուտ, այդ միտքով խնդրանքներ կը ներկայէ Աննա կայսրուհւոյն, իրեն համար ալ զօրավարութեան աստիճան կը հայցէ, և այդ կերպով միւս տարին, 1735'ին, Ղըզլար քաղաքը կը հիմնուի Հայ գաղթականներու ձեռքով (ԼէՕ. Բ. 414)։ Մինաս Տիգրանեան եպիսկոպոսը, Օրիի գործակիցը, մոռցուած էր այլեւս, զի նա Հայաստանի վերականգնութեան հին գաղափարներով կը մնար տակաւին։ Իզուր 1736 մարտին ընդարձակ տեղեկագիր մը կը մատուցանէր հին գործերը և հին խոստումները յիշեցնելով (ԵՁՆ. 455), բայց ոչ Ռուսական կայսրութիւնը, և ոչ Ռուսական ծառայութեանը մտած Հայերը՝ իրմով չէին հետաքրքրուիր։ Գոնէ Ռուսաստանի Հայոց առաջնորդ ճանչցուիլ կը փափաքի (ԼէՕ. Բ. 415), և չենք գիտեր թէ ինչու Կրետացին այդչափին համար ալ չմիջնորդեր, և ծերացեալ աշխատաւորը, մինչեւ իսկ յունադաւան եկեղեցին անցնելու միտքեր կը յղանայ (ԼէՕ. Բ. 415), և յուսաբեկ կը կնքէ իւր վաստակաբեկ կեանքը։ Անդին Ռուսական զօրավար դարձած Խրիստոֆորովն ու Կարապետովը՝ աւելի երջանիկ կեանք կը վարեն օտարի ծառայութեան մէջ։ Կարապետով դեռ կենդանի է Եղիսաբեթ կայսրուհւոյն օրով, 1744'ին առեւտրականներ, որուն պատուոյ օրիորդ կ'անուանուի իւր թոռը (ԼէՕ. Բ. 414)։

**ԿՐԵՏԱՑԻԻՆ ՄԱՀԸ**

**1990.** Ըսինք արդէն թէ Կրետացին Աբրահամ՝ Թավրէզի ուղեւորութենէն դառնալէն ետքը հազիւ հինգ ամիս եւս ապրեցաւ (§ 1981)։ Այդ հինգ ամիսներուն մասին ոչ մի յիշատակ չունինք, և ինքն ալ բան մը չի գրեր, և կ'երեւի թէ մօտալուտ վախճանը նախատեսելով, ասդը դօժօռնեան խօսքով գայն կը փակէ (ԿՐԵ. 90)։ Երեւանեցին կը գրէ թէ էբ ձեբ և ցէօլ աստօւքէ և յօօգօր եօկ (ՁԱՄ. 30), և վերջին ուղեւորութիւնը հիւանդութեան մէջ ըրած ըլլալը յիշեցինք (§ 1981), և պէտք կ'ըլլայ ըսել թէ ձմեռնային ուղեւորութեամբ Թավրէզէ դառնալովը՝ բոլորովին տկարացաւ, և խօթագին անցուց ձմեռը, և գարնան բացուելուն, 1737 ապրիլ 18'ին (ՇԱՀ. Ա. 227), Նոր կիրակիի երկուշաբթին, վախճանեցաւ, ու թաղուեցաւ Ս. Շողակաթի գաւիթին ձախակողմը։ Տարիքին վրայ ոչ իրմէ և ոչ ուրիշէ որոշ տեղեկութիւն չունինք, այլ բացատրութիւնները կշռելով կրնանք իբր ութսունամեայ մեռած ենթադրել։ Զինքն միշտ Կրետացի կոչեցինք, իւր ծննդավայրէն առնելով, բայց շատերէ Թրակացի կամ Թէ-

*Քիրտաղցի կամ Ռոտոսթոցի ալ կոչուած է, իւր առաջնորդական վիճակէն առնելով, զոր 1709'էն մինչեւ 1734, 25 տարի կառավարեց, գովանի յիշատակ թողլով ետեւէն։ Իւր կաթողիկոսական գործունէութեան նկարագիրը տուած եղանք, Նատիրի մօտ անցուցած օրերուն պարագաները պատմելով, որոնք իւր 29 ամսական պաշտօնավարութեան մեծագոյն մասը գրաւեցին։ Առեւտրին կարճութիւնն ալ արգելք եղաւ ուրիշ գործի ձեռնարկել, և եթէ շինուած ինչ ոչ կարաց առնել յաջողակ, պատճառ այն եղաւ, որ ժամանակ իւր ոչ ունեցաւ, զի մերթ ընդ շահէն լինէր։ Այսու հանդերձ Երեւանեցին ալ կը խոստովանի, թէ տան զմենեաեան սասանել արար զխարդախեան և զհեստար որքոյ ախտոյս և աշխէս, և բուռն երկրին մերոյ (ՋԱՄ. 30)։ Աթոռին համար բրածը, անոր պաշտպանութիւնն էր, որ այնպիսի չփոթ և խառնված ժամանակներու մէջ, ամէն ստացուածները և իրաւունքները և վայելքները անխափան պահպանուեցան, ոչ միայն չի վնասուեցան, այլ և նպաստներով և շնորհքներով բարդուեցան։ Իսկ ազգին համար ըրածները քաղելով պէտք է յիշել, թէ զբազումս ազատեաց ի մահուանէ, զզօրս իշխոց ի կոխմանէ, զբազմաց զտունս և զընտանիս ազատեաց ի գերելոյ և ի հարկանելոյ, զանհամար գերեալս ազատեաց, զբազումս փախուցեալս յետս դարձոյց, զի անոր բան և խնդիր մի ոչ անկանէր յերկիր առաջի ամենայաղթող թագաւորին Նատիրի, և նոյն իսկ Պարսիկ աւագանին և պալատականներ անոր միջնորդութեան կը դիմէին, չէ հնազանդ կարեաց հոգացէ Նատիրին մօտ։ Ուստի Երեւանեցիին հետ մենք ալ կրնանք կրկնել, թէ անոր յիշատակն օրհնութեամբ եղիցի (ՋԱՄ. 31)։ Զենք վարանիր արժանաւորագոյն հայրապետներուն հետ յիշել նորա անունը, իբրեւ Էջմիածինի պայծառութեան համար գլխաւոր վաստակաւորներէն մին։*

---

# Տ. ՂԱԶԱՐ Ա. ՋԱՀԿԵՑԻ

**1991**. *Մայրաթոռի միաբանութիւնը, հազիւ հանգուցեալ կաթողիկոսին թաղումը կատարած, յաջորդին ընտրութեան մասին հաւաքուեցաւ, բայց ընդհանուր համաձայնութիւն չկար։*

ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ

*Մեծամասնութեան միտքը Շղթայակիրին վրայ էր, որ Երուսաղէմը վերակենդանացուցած էր, և թէպէտ ծերացած էր, այլ տակաւին ժիր ու գործօն ու փորձառու ըլլալով՝ Էջմիածինն ալ կրնար վերակենդանացնել։ Այդ առեններ ընտրական իրաւունքը գլխաւորապէս Մայրաթոռոյ միաբանութեան ձեռքն էր, այն պայմանով որ Պարսկահայ և Տաճկահայ կեդրոններն ալ, այսինքն Ասպահան և Կոստանդնուպոլիս ալ՝ հաւանութիւն տային, և երկու պետութեանց ալ հրովարտակները ստանային։ Շղթայակիրէն զատ կաթողիկոսական ընտրելի կը ցուցուէին երկու մեծ կեդրոնները գտնուող Մայրաթոռի նուիրակները, Պետրոս Հռոմկլայեցին Կ-Պոլսոյ և Ղազար Ջահկեցին Զմիւռնիոյ։ Տեղապահին ով ըլլալը յիշուած չէ, բայց ամենայն հաւանականութեամբ, հանգուցեալին աթոռակալ Աղեքսանդր եպիսկոպոսն էր (§ 1974), երբեմն Եւդոկիոյ նուիրակը (§ 1970)։ Մայրաթոռի կողմէն պատուիրակ նշանակուեցան Թովմաս ու Մկրտիչ վարդապետները (ԱՏՏ. Բ. 50), և Կ-Պոլիս եկան, նախապէս Գրիգոր Շղթայակիրը կաթողիկոսութեան կոչելու հրահանգով, և եթէ այն չհաւանի, Պետրոս և Ղազար նուիրակներէն մէկը որոշելու՝ Կ-Պոլսեցւոց հետ համաձայնութեամբ։ Մասնաւոր նամակներ ալ կային՝ Էջմիածինէ Կ-Պոլիս գրուած, այս վերջիններուն՝ և գլխաւորապէս Ղազարին պաշտպանութեան։ Պատուիրակները Կ-Պոլիս բերին նախորդին մահուան գոյժը ու յաջորդի ընտրութեան առաջարկները, երբ Կ-Պոլսոյ մէջ տաք կերպով համերաշխութեան ճիգեր կը թափուէին (§ 1985)։ Շղթայակիրին անձին վրայ՝ Մայրաթոռի միաբանութեան ցուցած նախադասութիւնը, ազգին մէջ զգացուած ընդհանուր յարգանքը, և Կոլոտի իւր*

հայրապատիւ ընկերակցին հետ ունեցած ներքին կապը, կասկածի տեղի թող չէին տար Կ-Պոլսոյ եկեղեցական և աշխարհական մեծամեծներուն միտքին վրայ, և առաջին գումարումով, Գրիգոր Շիրուանցի պատրիարքը, Երուսաղէմի Շղթայակիրը, կաթողիկոս հռչակուեցաւ, բայց միայն ինքն դըժկամակ գտնուեցաւ։ Ըլլայ իր յառաջացեալ տարիքը, ըլլայ Երուսաղէմէ չբաժնուելու ըղձայումը՝ կենսական խնդիրներուն չլուծուած միջոցին (§ 1985), ըլլայ միաբանութեան մէջ կատարեալ համաձայնութիւն չտիրելը, և ուրիշ ընտրելիներ առջեւ անցընելու համար ոմանց ջանքերը (ՋԱՄ. Գ. 819), Շղթայակիրը հեռացուցին կաթողիկոսական ընտրութենէն, և բացարձակապէս մերժեց զայն ընդունիլ. Կոլոտի և ուրիշներու թախանձանքներն ալ չզօրեցին անոր հաստատամտութիւնը դրդուել։ Ինքն իր յայտարարութեանց մէջ կը յիշէ՝ թէ Դու այս երէցանգամ եղէր, որ զինքն կաթողիկոս ընտրել կ'ուզեն, որով կը տեսնուի թէ Ոսկնեցիին և Խոշաբեցիին ընտրութեանց առեն ալ իրեն առաջարկներ եղած են, զի Կրետացիին հաշճեպ ընտրութեան առթիւ առաջարկի առեն չէ կրցած ըլլալ։ Իսկ իր հրաժարելուն համար, պարզապէս անձնովքն վարկուցեալ զբեռն՝ հրաժարեցայ, կ'ըսէ, և այնպէս ալ Մայրեկեղեցւոյ մէջ յայտարարած է (ԱՍՏ. Բ. 50)։ Պետրոս Թիւթիւր, մայրաքաղաքին մէջ ներկայ, ամէն ջանք թափեց իրեն համար, կողմնակից խումբ մըն ալ ճարեց, բայց անցեալին մէջ բացուած սոր ընթացքը և անտեղի ձեռնարկները (§ 1986) մոռցուած չէին, և Կոլոտի անհնար էր անոր ընտրելիութեան կողմն ըլլալ, և յաղթեց Ղազար Ջահկեցիին ընտրութեան կողմը, և կաթողիկոս հռչակուեցաւ 1737 յուլիսին (ՋԱՄ. Բ. 45), և օգոստոս 7'ին իրեն գրուեցաւ (ԱՍՏ. Բ. 51)։ Նկատողութեան արժանի է որ Կոլոտը կաթողիկոսացնելու խօսք չէ եղած, ինչ որ կրնանք վերագրել Երեւանեցիին գրգռումներուն, և Կոլոտը Մայրաթոռին անհամակիր ցուցած ըլլալուն (§1945)։

**1992.** Ղազար, բնիկ Ջահուկ գաւառէն, Ունիթորներու կեդրոնէն, բայց ոչ Ունիթորներու խումբէն, ընդհակառակն բուռն ընդդիմադրութիւն տածող մըն էր անոնց դէմ, և Դրախտ Ցանկալի գիրքը, զոր 1735'ին հրատարակած էր Կ-Պոլսոյ մէջ, հերքմնագիր մըն էր հռոմէական վարդապետութեանց, և բացատրութիւն Հայ եկեղեցւոյ դաւանութեան, պատմութեան հետ խառն։ Նոյն միջոցներուն երգարան մըն ալ մամուլին յանձնած էր, որ 1737 օգոստոս 1'ին լոյս եկաւ։ Ղազար թէպէտ ուսումնականի և աստուածաբանի համբաւ ունէր, բայց վարքով և բարքով նոյն հռչակը չէր վայելեր, և իբրև խառնակ և մեծամիտ ճանաչուած էր, ու չէր և խռովասէր կենցաղ կը վարէր, վասնզի հարուստ ալ էր (ՋԱՄ. Բ. 46)։ Այսու հանդերձ նախադասուեցաւ թէ Կոլոտէ և թէ Կ-Պոլսոյ մեծամեծներէն, իբր չատ մասերով Պետրոսի վրայ գերազանց, և զի փիլիսոփայ և ծերունազարդ, հանճարեղ և քաղաքագէտ ըլլալով (ՋԱՄ. 31), կրնար զօրաւոր նեցուկ և զարգացուցիչ ըլլալ հայրապետական աթոռին։ Ղազար այդ բնաւորութեան նշանը տուաւ՝ իր ընտրութեան լուրը առնելուն պէս։ Չսպասեց որ պետական հաստատութիւնները ստացուին, այլ վստահանալով թէ պատրիարքը զայն կը ճարէ և ետեւէն կը հասցընէ, փութաց իր ուղեւորութեան պատրաստութիւնները տեսնել, հետեւորդներու և սպասաւորներու և սպասներու այնպիսի ճոխութեամբ, որուն նմանը չէր տեսեալ և ոչ ոք լուեալ ի կաթողիկոսացն Հայոց (ՋԱՄ. Գ. 819), և այս տեսակ հանդերձանքով Ջմիւռնիայէ մեկնեցաւ, և ցամաքային ճանապով, և անշուշտ հանդիպած քաղաքներն ալ ցուցադրութիւններ ընելով Կարին հասաւ 1737'ին վերջերը։ Կարին վերջին քաղաքն էր Օսմանեան տէրութեան, և անկէ Պարսկական հողը պիտի մտնէր. ուստի Կարնոյ կուսակալը առիթ ունէր Ղազարի մասին տեղեկութիւններ առնել և պարտուպատշաճը կարգադրել։ Դժբախտաբար անհամաձայնութիւն ինկաւ Ղազարի և կուսակալին միջեւ, և սոր սկզբնապատճառ եղաւ Ղազարի ձին, խայտ և ընտիր յոյժ, զոր կուսակալը ընծայ ուզեց, և Ղազար ընդդիմացաւ, և կուսակալը զինքն անարգուած կարծելով ուզեց վրէժ լուծել։ Իմանալով որ նա դեռ հրովարտակ չունի, զայն իբրեւ

**ՋԱՀԿԵՑԻՆ Ի ԿԱՐԻՆ**

*խաբեբայ մը նկատել ուզեց, և Հրամայեց ղահել չըա յօրքելա՛ն, իբրև պատուաւոր բանտարկութիւն, և միանգամայն Կ-Պոլիս գրեց ու ամբաստանեց։ Ղազար նեղի մտած, և ազատութիւնը ձեռք բերելու և վտանգի չհանդիպելու ստիպուած, ձին տուաւ, ադամանդեայ մատանի մըն ալ վրան աւելցուց* (ՁԱՄ. Գ. 819)։ *Ղազար իմացաւ միանգամայն, որ լատինամիտներու սադրանքով կուսակալը հրովարտակ չունենալուն լուրը առած էր, ուստի անոնց քսութենէն նեղուած ըլլալուն, ինքն ալ ձեռնարկեց անոնցմէ իր վրէժը լուծել։ Անոնց ընթացքը և պետական հրամանները և գլխաւորներուն անունները կուսակալին ներկայեց, որով չատեր ձերբակալուեցան և տուգանքներու դատապարտուեցան։ Այդ ձեռնարկներուն ատեն Ղազարի հետ էին նաև Սահակ վարդապետ՝ Ահագին մականուանեալ, Կարնոյ առաջնորդը, և Անանիա վարդապետ՝ Քէլլէճի մականուանեալ* (ՁԱՄ. Գ. 820)։

**ԿԱՐՆՈՅ ԴԷՊՔԵՐԸ**

**1993.** *Այդ միջոցին յանկարծ կը մեռնի Կարնոյ կուսակալը, զոր անդացի Տաճիկներ չարագուշակ կը մեկնեն։ Իբր զի քաղաքին մէջ երգում բրած են եղեր այլ ևս կաթոլիկութեան խնդիր չյուզել, որով կուսակալին յանկարծական մահը երդմնազանցութեան պատիժ կը նկատեն, և այդ պատճառով նոյն ինքն Ղազարի դէմ կ՚ելլեն, իբր թէ պատճառ տուած ըլլայ։ Ղազար գիտցաւ զինքն արդարացնել, թէ ինքն տեղական գործերուն անտեղեակ էր, և թէ առաջնորդը հաղորդած էր այդ տեղեկութիւնները։ Նիւթական հնչուն փաստերն ալ աւելցուց, և ինքզինքը զերծուցանելով փութաց փետրուարի սկիզբը սահմանագլուխը անցնիլ* (ԱՍՏ. Բ. 51), *և Կարսի ճանպով Պարսկական հողը մտնել։ Բարեբախտաբար կրցած էր հեռանալ, զի քիչ օր ետքը յատուկ սուրհանդակ կը հասնէր Կարին՝ եպարքոսական հրամանով, որ մեռած կուսակալին ամբաստանութեանց վրայ կը պատուիրէր Ղազարը անմիջապէս Կ-Պոլիս ղրկել հսկողութեան ներքև։ Կարնոյ Տաճիկներ իրենց ցասումը Սահակի վրայ դարձուցին, զոր Չիլ ղուրաղաշ կը կոչէին, և խնդրակներ յղելով Բասէնի մէջ ձերբակալել տուին առժամեայ կուսակալութեան ձեռքով, և Կարին բերելով չղթայակապ բանտարկեցին։ Սակայն Սահակ կրցաւ պանազան փաստերով և մանաւանդ նիւթականներով՝ զինքն արդարացնել, և բանտէն ազատիլ։ Բայց հազիւ թէ ազատած, իր արկածին պատճառ՝ Ղազարին եղած ըլլալը իմանալով, եկեղեցւոյ բեմէն անոր դէմ խօսեցաւ քաղամ էնլ, և բոլոր իւր վիճակին մէջ օրքէլը ըղմէլ, Վ՛ յէրէլ ղանան նօքա։ Սակայն Ղազար արդէն Էջմիածին հասած էր, և օծումն ալ ընդունելով հայրապետական աթոռին տիրացած* (ՁԱՄ. Գ. 821)։ *Ամսաթիւը ոչ Երևանեցին* (ՋԱՄ. 31) *և ոչ Շահխաթունեան* (ՇԱՀ. Ա. 227) *կու տան, բաւականանալով 1738 տարեթիւը նշանակել, այլ փետրուար 2՚ին Կարինէ մեկնիլը հաչուելով* (ԱՍՏ. Բ. 51), *իրէպ է օծումը դնել զատկին մօտ օրերը, որ այն տարի ապրիլ 2՚ին կը հանդիպէր։ Ղազարի առաջին գործերէն մին եղաւ եպիսկոպոս ձեռնադրել իւր եղբայրը Մկրտիչ այրի քահանան, և չահաբեր գործեր յանձնել միւս երկու եղբայրներուն, Անդրէաս և Յովսէփ Ջահկեցի քահանաներուն։ Ամիսս քանի մը աշխատեցաւ առատ ընծաներ պատրաստել, և չուտով Ասպահան գնաց, և Նատիր շահէն իրեն կաթողիկոսութեան հաստատութիւնը ընդունեցաւ և պատուասիրուեցաւ, ու Էջմիածին դարձաւ 1738 ամառուան վերջերը։ Հոն եկած էր նաև Պետրոս Քիւթիւր նուիրակը, որ Կարինէ անցնելով այնտեղի գործերուն մասին տեղեկութիւններ քաղած էր, և Աղեքսանդր Բիւզանդացի վարդապետն ալ իրեն օգնական առնելով, ջանաց Ղազարին սիրտը ցածուցանել Սահակի մասին, և երկուքին մէջ հաշտութիւն գոյացընել. Ղազարի կողմէն վճարում մըն ալ կարգադրելով ինպաստ Սահակի, բանտարկութեան և ազատութեան առթիւ ըրած ծախքերուն փոխարէն* (ՁԱՄ. Գ. 821)։ *Հաւանական կը կարծենք, բայց բացարձակ չենք կրնար պնդել, թէ Աղեքսանդր Բիւզանդացին, միևնոյն Եւդոկիոյ նուիրակ* (§ 1970), *և Կրետացիին աթոռակալ* (§ 1974) *Աղեքսանդր վարդապետն է, որ Բարաքաչ ալ կոչուած է։*

**Կ-ՊՈԼՍՈՅ ՇՓՈԹՆԵՐԸ**

**1994**. Կ-Պոլսոյ մէջ 1737'ին նուանդուն էին համերաշխութեան ճիգերը (§ 1986), բայց ծայրայեղ շարժումներ դիւրաւ իրարու կը յաջորդէին։ Նոյն տարին յուլիսի մէջ տեղի ունեցած էր կաթողիկոսական ընտրութիւնը, և Քիւթիւր նորէն Կոլոտի դէմ գրգռուած էր, զի անոր երեսէն զինքն զրկուած կը կարծէր կաթողիկոսական ընտրութենէն։ Ուստի կը սկսի նորէն յուզումներ շարժել անոր դէմ, և գրգռութեան առիթ կ'ընէր երեք նզովքի տուներուն երգեցողութիւնը, որուն մասին Կոլոտ կրկին խոստում ըրած էր դեսպանին (§ 1995)․ սակայն Քիւթիւր զայն իբր կաթոլիկութեան հանդէպ զիջում կը ներկայէր, և նախանձայոյզները կը գրգռէր, և կը յաջողէր մանաւանդ Կեսարացիներուն մէջ։ Մոռալուտ էր Եփեսոսի ժողովին տօնը օգոստոս 6'ին, և ոչ 8'ին (ԱՍՏ․Բ․52), և պէտք է այնօր հանդիպած ըսել Մայրեկեղեցւոյ մէջ պատահած շփոթութիւնը, երբ Կեսարացիներ Քիւթիւրէ գրգռուած պատրիարքի վրայ յարձակեցան ծեծելու միտքով (ՋԱՄ․Բ․46), և Կոլոտ փախչելով ազատեցաւ կատղած ամբոխին ձեռքէն։ Օգոստոս 12'ը իբր շփոթի օր նշանակելը թիւրիմացութիւն մըն է (ՋԱՄ․Բ․87), զի պահոց ուրբաթին կ'իյնայ, և շփոթի պատճառ մը չկրնար ըսնծայել, մինչ շատ յարմար կու գայ ժողովի տօնին օրը։ Քիւթիւրին պատրաստած աղմուկը հանդարտեցնելու աշխատեցան Ցակոբ Նալեան և Սարգիս Սարաֆեան իւր աշակերտները, որոնք Կոլոտի համակիրները յորդորեցին եկեղեցւոյ մէջ [illegible], և պատանալով՝ [illegible], որով Կոլոտ [illegible] (ԳԱԼ․36)։ Հանդիպած շփոթը և նզովքի շարականին համար ժողովրդական ցոյցը՝ առիթ տուաւ Վիլնէօվ դեսպանին կառավարութեան բողոքել, թէ [illegible], և եպարքոսութիւնն ալ հարկադրուած՝ գլխաւոր պաշտօնեաներէն մէկը 40 բարապաններով պատրիարքին յղեց, որ Գաղղիոյ տէրութեան մեծին դէմ նզովք կարդալը արգիլէ, որուն Կոլոտ կը պատասխանէ, թէ [illegible]։ Այդ պատգամաւորութիւնը կը դրուի [illegible] (ՋԱՄ․Գ․822), և կը հանդիպի օգոստոս 12'ին, պահոց ուրբաթին, և պէտք է ըստ այնմ եղելութեանց ամսաթիւերը ճշդել, ինչպէս որ մենք ալ ցուցուցինք։ Միտքերը տակաւին չէին հանդարտած, և յուզումները կը սպառնային կրկնուիլ Նիկիոյ ժողովին տօնին օրը, սեպտեմբեր 3'ին, և ոչ 5'ին (ՋԱՄ․Բ․87), և իրօք ալ այն օր Իւսկիւտար (ԱՍՏ․Բ․51) և [illegible] (ՋԱՄ․Գ․823), շարականին երեք տուները երգել տուողներ եղան, բայց մէջերնէն վեց հոգի ձերբակալուեցան և թիապարտութեամբ բանտարկուեցան (ԱՍՏ․Բ․51), թէպէտ քանի մը ամիսէ միջնորդութեամբ ազատեցան (ՋԱՄ․Գ․823)։ Այս եղելութեանց վրայ Քիւթիւր Կ-Պոլսէ խոյս կու տայ, իրեն համար ալ վախնալով, և Էջմիածին կը դառնայ, ուր հասած լինելը պատմեցինք արդէն (§ 1993)։ Սոյն միջոցին տեղի ունեցած էր Ղազարի նկատմամբ Կարնոյ կուսակալին ամբաստանութիւնը (§ 1992), որուն մասին Կոլոտ ու Շղթայակիր [illegible]․ սակայն եպարքոսական հրամանը եւ չառնուեցաւ, և միայն հանդարտեցան, երբ լսեցին թէ Ղազար արդէն [illegible] (ԱՍՏ․Բ 51)։ Այդ միջոցին եպարքոսական իշխանութիւնը կը վարէր Եէկէն Մէհմէտ փաշա, իբրև տեղակալ, զի եպարքոս Մուհսինզատէ Ապտուլլահ փաշա, Աւստրիացոց դէմ պատերազմի կը գտնուէր, և թէպէտ յաղթութեամբ դարձաւ, սակայն պալատական բանսարկութեամբ պաշտօնանկ եղաւ (ԺՈՒ․341), և Թեսաղոնիկէ աքսորուեցաւ, և 1738 յունուար 20'ին իրեն յաջորդեց տեղակալ Եէկէն Մէհմէտ փաշա, որ կը ներկայացուի իբր հակառակ քրիստոնէից (ԱՍՏ․Բ․51)։

**ԼԱՏԻՆԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ**

**1995**. Գրիգոր պատրիարք Կ-Պոլիս եկած էր Երուսաղէմի գործերուն վճռական լուծում մը տալու համար, և գրեթէ երկու տարի էր, որ Կ-Պոլիս կը դեգերէր, և գործը չէր վերջանար վերահաս եղելութեանց պատճառով։ Երկու պատրիարքներուն մեծ յոյսը Գաղղիոյ դեսպանին վրայ էր, որ թէ իւր սեփական լա-

տինական տեսակէտէն ալ Հայերուն դատին նպաստաւոր էր, և թէ կառավարութեան առջեւ ալ ազդեցիկ դիրք կը վայելէր։ Ցեր֊կրորդ կիրակէէ աղուհացից, 1738 փետրուար 19'ին, նոր դիմում մը ըրին դեսպանին՝ Գրիգոր և Յովհաննէս ըլլալ խնդիրին կարգադրութեան, բայց ահա մարտ 13'ին պատերազմի դրօշը մէջտեղ ելաւ, և եպարքոս Եէկէն Մէհէմմէտ փաշա Աւստրիոյ դէմ պատերազմի մեկնեցաւ (ԱՍՏ. Բ. 51), և նորէն գործեր կաղալու սկսան։ Ժողովուրդին մէջ լատինական մերձեցումներ խնդիր չէին յուզեր Երուսաղէմի գործին սիրոյն, բայց երբոր այն ալ կը դանդաղէր, դժգոհները լեզու հանելու առիթ կու տար, և զատկին մօտենալուն, ապրիլ 2'ին, նորէն շշուկներ բարձրացան, երբոր տեսան, թէ ժողովուրդք մեծաւ կողման, իմա կաթոլիկութեան համամիտները, Երեւան ամբոխէ յեկեղեցէ Լատի֊նացւոց։ Սկսան Կոլոտը ստիպել, նա ալ Լատին եպիսկոպոսին մարդ ղրկեց, Գաղղիական դեսպանին անձամբ գնաց, որ եղած պայմանները յարգուին, և ժողովուրդին գանգատի առիթներ չտրուին (ՁԱՄ. Գ. 823)։ Այստեղ՝ հռոմէական պատմագիրը կ'ըսէ թէ դեսպանը պատրիարքէն պահանջեց Բողբ դաւանութեան ու է յայտարարութեան ողջամտութեան հաստոյն, և թէ պատրիարքն ալ ուզուած հռոմէական դաւանութիւնը տուաւ (ՁԱՄ. Գ. 823)։ Սակայն աղբիւրներու հետեւողութեամբ կը տեսնուի, թէ դեսպանը ուզեց միայն տեսնալ զամենայն կաւերական ֆրեան Հայոց իրենց իրաւունքներուն նկատմամբ, որ ըստ այնմ նոր հրովարտակ կազմել տալու աշխատի (ԱՍՏ. Բ. 53)։ Իրօք ալ ենթադրելի իսկ չէ, որ դեսպանը, կանուխէն Հայոց հետ համաձայնութիւն գոյացնելէն ետքը, նորէն դաւանութիւն ուզէ։ Բայց սեւեռեալ գաղափարով գրողներուն վրայ՝ այս տեսակ այլայլութիւններ շատ տեսնուելու չեն։ Ինչ ալ ըլլան այդ պարագաները, դեսպանին միջամտութիւնը հանդարտեցուց շշուկները, և լատինամիտներ սկսան Հայ եկեղեցիներու մէջ երեւալ։ Ցատուկ եկեղեցի մը ունենալու գաղափարը նորէն մէջտեղ հանեցին, սակայն Կոլոտ խոհական կերպերով արգելեց, և ոչ եբող ամենեւ նոր խնդանել (ՁԱՄ. Գ. 823)։ Այսու հանդերձ գործերը երկարեցին, և ամ մի ողջոյն նորէն պարապի անցաւ, զի նոյն ինքն Վիլնէօվ դեսպանը, որ իւր տէրութեան կողմէն Տաճկաց և Աւստրիացւոց մէջ հաշտութիւն գոյացնելու պաշտօն ստացաւ, պարտաւորուեցաւ պատերազմին տեղը երթալ, Սերպիոյ Պելկրատ քաղաքին առջեւը (ԺՈՒ. 342)։ Շղթայակիրը այդ պարապէն օգտուեցաւ Իւսկիւտարի մէջ Երուսաղէմի վանքին այգին ընդարձակելու՝ երեք նոյնչափ մասեր աւելցնելով, մէջը վանատուն և մատուռ շինելու, և Մայր եկեղեցւոյ շրջափակին մէջ ալ Երուսաղէմի հոգետուն մը հաստատելու (ԱՍՏ. Բ. 52)։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԽՆԴԻՐԸ**

**1996**. Տաճկաց և Աւստրիացւոց պատերազմին վերջը Տաճկաց նպաստաւոր դարձաւ, հաշտութեան փափաքներ տիրեցին, և ոբովհետեւ Եէկէն Մէհմէտ հակառակ կը կենար, եպարքոսութենէ ինկաւ, և Իւաստս աքսորուեցաւ, և իրեն յաջորդեց Հաճի Մէհմէտ փաշա, Այվազ (ԱՍՏ. Բ. 52), կամ Էլիաս (ԺՈՒ. 342), կամ Էլվիաս (ՆՐՏ. Ա. 244) մականուանեալ։ Խաղաղութեան սկզբունքները հաստատուեցան 1739 սեպտեմբեր 1'ին, և սեպտեմբեր 18'ին Պելկրատի դաշնագիրները կնքուեցան Աւստրիոյ և Ռուսիոյ հետ (ՆՐՏ. Ա. 67), Օսմանցոց նպաստաւոր պայմաններով, որով ասոնք Պելկրատի և Օրշօվայի կը տիրէին, Ուլահ և Պուղտան իրենց կ'անցնէր, Ազախի դղեակը պիտի քանդուէր, Սեւ Ծովի Ռուսական տորմիղը պիտի ջնջուէր, և Ռուսներէ գրաւուած տեղեր ետ պիտի տրուէին (ԺՈՒ. 342)։ Վիլնէօվ դեսպան, որ յանուն Լուդովիկոս ԺԵ թագաւորի, խաղաղութեան միջնորդն էր եղած, մեծապէս կը բարձրանար Օսմանցոց աչքին, ըստ այնմ ալ կը զօրանար իւր ազդեցութիւնը։ Շղթայակիր ու Կոլոտ իրաւունք ունէին Գաղղիական պաշտպանութեան վրայ դնել յոյսերնին, և հնարաւոր պայմաններով անոր բարեացակամութիւնը մշակել, քանի որ գիտէին թէ Երուսաղէմի խնդիրներուն մէջ Հայոց ու Լատինաց շահերը համերաշխ կ'ընթանային Յունական ոտնձգութեանց դէմ։ Յոյներն ալ զգացին իրաց խկութիւնը, և տեսնելով որ իրենց պահանջները բուռն ընդդիմութեան կը հանդիպին և յա֊

ջողելու հաւանականութիւն չունին, սկսան հետզհետէ իրենց լեզուն փոխել, և Հայերուն մօտենալ, թերևս վախցան ալ՝ որ մի գուցէ Գաղղիական զօրաւոր և կրկին զօրացած ազդեցութիւնը իրենց դէմ գործէ, և չահելու տեղ կորուստ ալ ընեն։ Անշուշտ այդ տեսութիւնները պատճառ եղան, որով 1739 ապրիլ 7'ին, նոյն իսկ ի դեսպանատան, փոխադարձ դաշնադրութիւն մը գրուեցաւ, առընթերութեամբ և կնքով դատաւորաց և ծխաւորաց երկուց ազգաց, և ի ձեռն Իշխանաց (ԱԱՏ. Բ. 54), որ այն դարուն միջազգային լեզու էր։ Այդ դաշնագիրով երկու կողմերն ալ բացարձակ տէր կը մնային այն իրաւունքներուն և ստացութիւններուն զորս կը վայելէին, Ասորիք և Եթովպացիք և Եգիպտացիք Հայերուն հետևեալ կը ճանչցուէին, և Հայեր ու Յոյներ ընդհանուր իրաւունքներու մէջ հաւասար կ'ընդունուէին, Յոյներու նախապատուութեամբ (ԱԱՏ. Բ. 55)։ Կոլոտ 1739 տարւոյն յունուար 1'ին յատուկ նամակ ալ գրած էր, Գաղղիոյ վարչապետ Անդրէաս Ֆլէօրի կարդինալին (André Fleury), հարկաւ Վիլնէօվի խորհրդով, որուն պատասխանը ստացաւ օգոստոս 31 թուականով (ԱԱՏ. Բ. 56), որ Հայոց համար մեծ համակրութիւն և անոնց խնդիրին պաշտպանութիւն կը խոստանար Վիլնէօվի ձեռօք, իսկ դաւանական խնդիր չէր յուզեր բնաւ։ Պատասխանին ուշանալուն պատճառը անշուշտ Վիլնէօվի բացակայութիւնն էր, որ պէտք էր Կ-Պոլիս դառնար, որպէսզի պէտք եղածը գործէր։ Ըստ այսմ ալ կարգադրուեցաւ, և Հայեր Նոր Հաթթըշէրիֆ կամ Նուիրական հրովարտակ ստացան Մահմուտ Ա. սուլտանին կողմէն, որով վճռապէս կ'որոշուէր, որ ոչ ինչ ունէին բաժին ժառանգութեան, և որպէս եղանակաւ վարէին ուղղափառաց և ուղղաւորութեան իւրեանց, անխափան պահեն ոյժ և զօրութիւն, և այլեւս փոխադարձ վէճ և խռովութիւն չհանեն։ Հայերուն հետ Լատիններուն համար ալ նմանօրինակ հրովարտակ առնուած պիտի ըլլայ, որ Յոյներ՝ իրենք ալ ստանալու համար Գաղղիոյ դեսպանին դիմեցին, և խնդրանքնին կատարուեցաւ (ԱԱՏ. Բ. 53), որով վասն երից ազգաց համահաւասար հրովարտակներ՝ ապագային երաշխաւորութիւն և հաստատուն օրինագիրք նկատուեցան։ Այս կերպով Ս. Յակոբեանց մայրավանքին դէմ Յոյներուն յարուցած պահանջները հերքուեցան, միայն Յոյներէ յափշտակուած վէճակն Հաղէպէյ կամ Եթովպացւոց՝ անոնց ձեռքը մնաց (ՋԱՄ. Գ. 824)։ Երուսաղէմի նոր պատմագիրը այդ նշանաւոր հրովարտակին թուականը նշանակել կը մոռնայ, որ 1740'ի հրովարտակի անունով ճանչցուած է։

**1997.** Ահա այսպէս վախճան եղև այս ահագին յուզմանց և խռովութեանց (ԱԱՏ. Բ. 54), և Կ-Պոլսոյ մէջ փակուեցան խնդիրները, բայց անդին Երուսաղէմի մէջ նոր վէճ մը բացուած էր

**ՇՂԹԱՅԱԿԻՐ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ**

Հայոց և Լատինաց մէջ, Իւղաբերից սեղանի և Բեթղեհէմի եկեղեցւոյն պատճառաւ, հարկաւ վերջնական լուրը առած չըլլալնուն համար։ Որովհետև երբոր լուրը Կ-Պոլիս եկաւ, անմիջապէս դեսպանին դիմում եղաւ, որ խստիւ գրեց իրեններուն հրովարտակներուն հիման ընթանալ և վէճ չյարուցանել, և իւր նամակը Շղթայակիրին յանձնեց, որ 1740 մայիս 6'ի նամակով զայն իւր տեղապահ Գաբրիէլ վարդապետին ղրկեց, որ Լատիններուն յանձնէ. և յուզմունքներ դադրեցան։ Շղթայակիր այդ նամակով բազում գովութիւնս գրեաց դեսպանին, և իրեններուն ալ խրատ և յորդորական բանս ուսուցուց, որ օրինօք համբերեսցեն և ջանան չտալ տեղի ատելութեան (ԱԱՏ. Բ. 60)։ Շղթայակիրի մեծ հոգածութեան նիւթ եղաւ նաև մաքրել այն պարտքերը, որոց ներքև ինկաւ չորս տարի տեւող խնդիրին պատճառաւ։ Ինքն արդէն այդ գործին վարժ, կրցաւ բարերարներու և բարեսէրներու զգացումները շարժել և պէտք եղած գումարը ճարել, որով կրցաւ համարձակ գրել, թէ ոչ ինչ դրամ առաք ի Կոստանդնուպօլսէ զեվանդակին հարկացը հանդերձ շահու, և ոչինչ դրամ է վերայ աթոռոյն։ Սակայն ստիպուեցաւ այդ պատճառով Կ-Պոլիս մնալ Ջաւիկէն ետքն ալ, որ ապրիլ 6'ին կը հանդիպէր, և հազիւ օգոստոս 25'ին մեկնեցաւ ծովագնաց ճանապարհով։ Իւստոսթոյի մէջ առաջնորդ Յովհաննէս վարդապետէ հիւրասիրուեցաւ և նուէրներ ալ հաւաքեց։ Տարատնէլի բերանը Պօղազհիսարին առջեւ նաւեր-

*նրին խրեցաւ և հազիւ ազատեցան։ Հաղոս հանդիպելէ առաջ նաւերնին ջուր առնել սկսաւ, և չորս օր գիշեր ու ցերեկ պարպելու աշխատեցան։ Վերջապէս Խաչի բարեկենդանին կիրակամուտին սեպտեմբեր 6'ին, և ոչ 9'ին, Յոպպէ հասան, և Խաչվերացին օրը սեպտեմբեր 14'ին, և ոչ 15'ին, Երուսաղէմ մտաւ Շղթայակիրը ուղեկից ուխտաւորներով մէկտեղ, 4 տարի ու 4 ամիսէ աւելի բացակայութենէ առաջ* (ԱՍՏ· Բ· 61), *սակայն յաջող վերջաւորութեամբ։ Շղթայակիրի բացակայութեան միջոցին խնդիրներ պակաս եղած չէին Երուսաղէմի մէջ, սակայն Գաբրիէլ տեղապահ կրցած էր անվըտանգ անցընել միջադէպները, և ամենայն ինչ կանոնաւոր յանձնեց պատրիարքին։ Շղթայակիր թէպէտ ծերացեալ, սակայն ձեռքէն չհանեց աթոռին գործերը, միայն իրեն օգնական և իբր ապագայ յաջորդ նշանակեց Թէոդորոս եպիսկոպոս Խարնեցին, Տարօնի գաւառէն, ինչպէս կը գրէ Երուսաղէմի պատմագիրը ստոյգ աղբիւրներու հետեւողութեամբ* (ԱՍՏ· Բ· 75). *և չարդարանար ուրիշներուն գրածը, թէ պատրիարքութեան գործերը փոխանցեց* ի յետոյ Յարութիւն վարդապետին, և վերէր կեանս իւր մնացեալ յաշխարհէ (ՉԱՄ· Գ· 824)։

**1988**. *Երբոր Շղթայակիր մեկնեցաւ, Կոլոտ արդէն պարտասած և տկարացած, և երկարատեւ և տագնապալից պատրիարքութենէն յոգնած, պէտք տեսաւ քիչ մը հանգիստ տալ իրեն, և ազգայիններու հաւանութեամբ իրեն փոխանորդ կարգեց՝ իր ընտրելագոյն աշակերտներէն Յակոբ Նալեան եպիսկոպոսը, որ արդէն Կ-Պոլիս կը մնար իբր Կոլոտին օգնական։ Իսկ այս անգամ լիազօր իշխանութեամբ տեսակ մը տեղակալութեան դիրք կը ստանար։ Այդ առթիւ նոր պատմագիրը կ'աւելցնէ, թէ* Կոլոտ եր է մէկ, երբուլ յաւէտ յոյլ և այլ տեղէ և է Հում (ՉԱՄ· Գ· 824)։ *Բայց նկատելով որ Կոլոտ յոյժ տկարութեան համար գործէ քաշուիլ որոշած էր, հաւանական չերեւիր հետաւոր ուխտագնացութեանց միտք ունենալը։ Անոր տկարութիւնը՝ խօթագին վշտակրութիւն եղած պիտի ըլլայ, զի Շղթայակիրին մեկնելէն հազիւ վեց ամիս առաջ կեանքը կը կնքէր, տակաւին խորին ծերութեան տարիք չունենալով։ Կոլոտ 37 տարեկան պատրիարք ընտրուած էր 1705'ին* (§ 1923), *և 26 տարիէ իվեր պաշտօնը կը վարէր, և 63 տարեկան էր տակաւին, որ ընդհանուր տեսակէտով գործէ քաշուելու տարիք չէ։ Այս ալ ծանր խօթութեան մը գոյութիւնը կը հաստատէ, թէպէտ յանուանէ յիշուած չէ։ Իրօք ալ գրուած կը գտնենք* Բէ դատրէարըն խօշ էր, և ախըն մահտալի էր (ԳԱԼ· 42)։ *Իր վերջին օրերը ուր անցուցած ըլլալը չենք գիտեր, բայց հաւանաբար իրեն հանգըստարան ընտրած էր Իւսկիւտարի հովաստուն բարձանց վրայ Շղթայակիրէ շինուած Երուսաղեմական վանատունը, որուն իրաւունք ալ կրնար ունենալ, իբրեւ Երուսաղէմի վերակենդանութեան սկզբնապատճառը։ Չի եթէ անուրանալի են Շղթայակիրին Երուսաղէմի համար ունեցած երախտիքը, պէտք չէ մոռնալ թէ առաջին անգամ Երուսաղէմի համար աշխատողն ու ձայն բարձրացնողը* (§ 1911), *անոր պարտքերուն երաշխաւորութիւննստանձնողը* (§ 1915), *պատրիարքութեանց միացումը ջնջողն ու Շղթայակիրը հրաւիրողը* (§ 1924), *և բոլոր իր պատրիարքութեանը միջոցին Երուսաղէմի համար անձնուէր աշխատողը՝ Կոլոտն էր եղած։ Կոլոտի մահը տեղի ունեցաւ 1741 փետրուար 13'ին, մեծպահոց առաջին ուրբաթ օրը. իսկ յուղարկաւորութիւնը յաջորդ շաբաթ օրը, Տեառնընդառաջին տօնին, անշուշտ Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչին մէջ, վասն զի եկեղեցւոյն գաւիթին մէջ ալ նպատաստուեցաւ իր գերեզմանը։ Յետոյ ժամանակաց 1888'ին, Ղալաթիոյ բակին մէջ եղած փոփոխութեանց առթիւ, գաւիթին քանդուելովը, գերեզմանը այժմ բացօթեայ մնացած է, եկեղեցւոյ աւագ դրան մօտ, մանողին աջակողմը, և տապանագիրն ալ ազուցուած է եկեղեցւոյ պատին* (ԿՈԼ· 77)։ *Թաղման հանդիսադիրն եղաւ ինքն Նալեան, որ արդէն գործնական կերպով պատրիարքութիւնը վարողն էր, և միաձայն հաւանութեամբ, և հանգուցելոյն ալ թելադրութեամբ, իսկոյն պաշտօնապէս պատրիարք հռչակուեցաւ։ Թէեւ* ինչն էոլ դատր *Թաղման՝* դէգա *կ'րաւի* յորտանէ

ԿՈԼՈՏԻ ՄԱՀԸ

տըրօն ղէեօռ էլէոնօօըեօն (ՁԱՄ. Գ. 824), կամ ուրիշ բացատրութեամբ՝ մաճօօօն էըէըօըը օըն էօլ հօէօօ պօօըէօըէօլօն էէլօն (ԿՈՂ. 76), սակայն ձեռագիր յիշատակարանը կը գրէ թէ փետրուար 15'ին Նօօօօ պօօըէօը (ՄՐԳ.), որով արքունական հաստատութիւնը կիրակի օր տեղի ունեցած կ'ըլլայ։ Իրօք ալ անպատեհ էր միեւնոյն թաղման օրը այնպիսի հանդէս կատարել։

**1999**. *Ցովհաննէս պատրիարք Բաղիշեցի, մականուանեալ Կոլոտ, ոչ միայն իւր դարուն, այլեւ շատ դարերուն համար կարկառուն դէմք մըն է. կարողութեամբ և արդեամբ*

**ԿՈԼՈՏԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ**

*մեծ, որ Սահակներու և Շնորհալիներու պէս հռչակ և պաշտամունք իսկ ունեցած կ'ըլլար, եթէ աւելի հին դարերու մէջ ապրած ըլլար։ Իւր գործունէութիւնը մենք նկարագրեցինք իրողութիւնները պատմելով, և ոչ խորհրդածութիւններ ընելով, վասնզի գործերը ինքնին պերճախօս են ինպաստ իրենց գործողին։ Շատերուն կողմէ անոր մասին գովութիւններ գրուած են, և վերջերս գայն յատուկ հատորի նիւթ ըրաւ Կիւլէսէրեան Բաբգէն վարդապետ, այժմ եպիսկոպոս (ԿՈՂ.), ուր իվեր կը հանէ Կոլոտի ձիրքերը իբր վարդապետ և պատրիարք, իբր շինող և գործիչ, իբր գրասէր և բեմբասաց. սակայն մենք չենք կարող այդչափ մանրամասնութեանց հետեւիլ։ Ինչ որ մեր նպատակին համար պէտք կը զգանք բացատրել, Կոլոտի տեսութիւններն ու գործողութիւններն են կաթոլիկ դրութեան հանդէպ, որուն ոմանք զինքն նպաստաւոր, և մինչեւ իսկ հետեւող կ'ուզեն ցուցնել. և այդ իմաստով ալ կը գրեն, թէ Դեօօօ ղէօօըօօըեօմբ ե բօըէ ձաճօօօմբ (ՁԱՄ. Գ. 824). մինչ անդին զայն կաթոլիկներու հալածիչ ցուցնել ուզողներ ալ պակաս չեն (ՄԽԻ. 334—335), և անշուշտ երկու ծայրերն ալ միանգամայն ստոյգ չեն կրնար ըլլալ։ Բայց աւեզծուածը շուտով կը պարզուի, եթէ մեզի իբր կանոն առնենք հայադաւան ուղղափառութեան ներողամիտ սկզբունքը, որուն ուղղամիտ գործադիրն եղաւ Կոլոտ։ Հայը իւր դաւանութեան ուղղութիւնը գիտնալով ու պաշտպանելով և ուրիշ դաւանութիւնները հերքելով հանդերձ, ընդհանուր քրիստոնէական սկզբունքը գերիվերոյ կը դասէ, և յաւիտենական փրկութեան պայմաններու հետ չխառներ, և փրկութիւնը իրեն միայն սեփական իրաւունք չկարծեր, երբ ուրիշներու մօտ ալ տեսնէ քրիստոնէութեան սկզբնական և էական ճշմարտութեանց ներկայութիւնը։ Եղան ժամանակներ՝ յորս նախանձայուզութիւնը միամտութեան և հակառակութիւնները ընդդիմութեան առիթներ ընծայեցին, ինչպէս ամէն արարք՝ հակարարք կը գրգռեն. սակայն այն ոչ օրէնք էր և ոչ սկզբունք, և հանդարտ մրցում մը կրնար իրաց վիճակը ճշդել։ Ահա այս դրութեան հաւատարիմ հետեւող մը եղաւ Կոլոտը, հայադաւանութեան պաշտպան, հռոմէադաւանութեան ընդդիմաբան, բայց ոչ ամէն ինչ որ հայկական է, այդ պատճառով միայն՝ ընդունող և գովող, և ոչ ամէն ինչ որ հռոմէական է, այդ տեսութեամբ միայն՝ մերժող և անարգող։ Կոլոտ իւր օրով հրատարակուած Մխիթարի և անոր նմաններու գիրքերը պատուով ընդունած էր, բայց ոչ ամէն պարունակութիւնը հաւասարապէս ընդգրկած։ Աւելին ալ ըրած է։ Խարբերդցի Ղուկաս Աքքահամեան Գասպարեանց վարդապետին լատիներէնէ և իտալերէնէ հմտութենէն օգտուելով, տասը կտոր մեծահատոր, նոյնչափ ալ մանր գիրքեր հայերէնի թարգմանել տալով, կը յաւելուր է քանյօ ֆէտօօըեան օըթօյ էնէէլքցայ, ինչպէս Հաննա կը գրէ (ՀՆՆ. 176)։ Բայց ոչ թէ այդ բոլոր գիրքերուն կատարելապէս համամիտ էր, զի ինքն իսկ կը յայտարարէ, թէ անոնց պարունակութիւնը է ձեԶ ծօղէանց ըէըէըն օօնէ բօօօօօցեօւ, ե է ձեԶ մըէօց՝ ըօմանօ նէէխեօւ ե ըօմանօ է մօլօըէըէնօյ պըօօւ բօղբօջեօւ (ԿՈՂ. 48), և թէ այդ ծաղիկներուն վրայ իջած ցօղը ըէօնօցեօւ օյօբօըօյէց հանդիպելուն փոխուած է, պէտք չէ զարմանալ թէ ցօղն է ըօյն ֆօխեօցէ (ԿՈՂ. 49)։ Այդ յայտարարութենէ ետքը անհնար է այլեւս կասկածով վերաբերուիլ Կոլոտի ներքին համոզումներուն վրայ, և պէտք չէ ալ զարմանալ, եթէ Երուսաղէմի խնդիրին սիրոյն հռոմէականներուն կը մօտենայ, և դեսպանին պատուով կը վերաբերուի, կամ եթէ Հայ եկեղեցիները անարգողներուն հետ*

*խատիւ կը վարուի, պետական իշխանութեան սուրբողական պահանջումները յարգելով։ Հանդերձ այնու, գործին խիղճին գիտակից, նոյն այս սկզբունքով կը պաշտպանէ Կոլոտի ընթացքը, երբոր իբր առարկութիւն կը գրէ, թէ կրնան «ոմանք ի մերայնոց գիտել տալ, թէ այս թարգմանուած լատինական գիրքերուն մէջ գտանին բանք ոմանք՝ որք ոչ ընդունելի են Հայոց»։ Աստուածաշունչէն ետքը թէ այսպիսի խօսքեր չկան գտանին, անոնց թիւը մի ի հազարերորդ կը հաշուէ, և կը պատասխանէ թէ չորցած ճիւղի մը համար ծառը արմատախիլ չեն ըներ, և մարգարիտի չարքէն մէկ հատ փտած ըլլալուն համար շարանը ամբողջ աղբիւս չեն նետեր. նոյնպէս գիրքի մը մէջէն սխալ մը գտնուելուն համար բոլոր գիրքը մերժել պէտք չէ։ Օրինակ կը բերէ Դաւիթ Անյաղթը, որ Արիստոտէլի պէս հեթանոսի և Պորփիւրի պէս ուրացեալի գիրքերն ալ թարգմանեց՝ հայելով մանաւանդ ի մեծամեծ օգտութիւնս նոցին, ոչ է ինչ* (ՀՆՆ. 177)։

**2000**. *Կոլոտ, ուսմանց և գիտութեանց այդչափ հետապնդող, յատուկ երկասիրութիւն մը թողած չէ։*

**ԿՈԼՈՏԻ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ**

*Սակայն ոչ անկարողութեան, այլ պաշտօնական զբաղմանցը պիտի վերագրուի, զի իւր կեանքին ընտրելագոյն և արդիւնաւոր մասը պատրիարքական պաշտօնին նուիրեց, շարունակ տագնապներէ շրջապատուած և կնճիռներէ նեղուած։ Այդ մասին իրեն փոխանորդած պէտք է նկատենք իւր ընտրելագոյն աշակերտը, Յակոբ Նալեանը, որ բազմաթիւ երկասիրութիւններ թողած է՝ իւր վարդապետին յորդորանքով։ Կոլոտի արդիւնաւոր գործունէութեան պիտի վերագրենք իւր ժամանակին Կ-Պոլսոյ մէջ տպագրուած գիրքերուն շատութիւնն ալ, որ մօտ երեսուն տարիներու մէջ 90'ի կը հասնի* (ՏՊԱ. 263—270), *և անկէ ետքիններն ալ Կոլոտէ ներշնչուած եռանդին ու ջանքին պիտի վերագրուին։ Կոլոտ արդիւնաւոր եղած է նաև յատուկ դասատուն կամ դպրատուն հաստատելով, անդատին իւր վարդապետութեան սկիզբէն, թէ Պլակի և թէ Կ-Պոլսոյ մէջ, ինքն իսկ իբր ուսուցիչ աշխատելով աշակերտաց կրթութեան, որոնցմէ* 27 *եկեղեցականներու ցուցակը աւանդած է Սարգիս դպիր Սարաֆ-Յովհաննէսեան իւր ձեռագիր յիշատակարաններու մէջ* (ԿՈՂ. 70), *բայց անոնցմէ դուրս ալ անուններու կը հանդիպինք* (ԿՈՂ. 71), *թող եկեղեցական աստիճանի չբարձրացող աշակերտները։ Վերջապէս պէտք չէ անյիշատակ թողունք ուսմանց և ուսումնականաց ինչպաստ Կոլոտով սկսած մատենադարանը Գումքաբուի մայրեկեղեցւոյն կից սենեակներուն մէջ, ուր սկսաւ հաւաքել իւր սեփականութիւնն եղող տպագիրները, իրեն թարգմանել տուած գիրքերը, և ձեռք ձգել կրցած գրչագիրները։ Որոշ չենք կրնար ճշդել թէ քանի հատորի կրնային հասնիլ իւր ատենը, զի իւր յաջորդներուն նուէրներով ու ջանքերով ալ մատենադարանը ճոխացաւ* (ԿՈՂ. 103), *և մեր ժամանակներու մէջ հաստատուած Ազգային մատենադարանին գլխաւոր և առաջին տարրները կազմեցին* (ԿՈՂ. 105)։ *Կոլոտի կերպարանին վրայ գրաւոր աւանդութիւն մը չգտանք, բայց Նշանեան Մեսրոպ վարդապետի հետազօտութեամբ Երուսաղէմի գրչագիրներէն* 1717 *թուականով քաղուած պատկեր մը, կը ցուցնէ զայն հասակով միջակ, դէմքով բոլորակ, մօրուքով թեթեւ ու կարճ, և աչքով վառվռուն, եկեղեցական զգեստով, և գլխաբաց նստած։ Անձնահաճութիւն չկարծուի աւելցնել, թէ շատեր նմանութիւն մը տեսան իմ իսկ կերպարանին հետ, միւս կողմէն կատարեալ հարիւրամեակ մը անցած է անոր մահուան* 1741 *փետրուար* 13 *թուականէն մինչեւ* 1841 *փետրուար* 11, *իմ ծննդեան օրը։ Այստեղ կը փակենք Կոլոտի վրայ ըսելիքնիս։*

**2001**. *Յիշեցինք Անկիւրիոյ մէջ տեղի ունեցած շփոթը, և չորս եկեղեցիներուն հոռմէականներու ձեռք*

**ԱՆԿԻՒՐԻՈՅ ՇՓՈԹՆԵՐԸ**

*անցնիլը, և գործին կարգադրութեան համար Սարաֆեանին ղրկուիլը* (§ 1988)։ *Երբոր Սարաֆեան մեղմ միջոցներով չկրցաւ գործը գլուխ հանել, պատրիարքարան պարտաւորուեցաւ կառավարական հրաման ղրկել տալ, որ ուր եկեղեցիներու բանալիները յանձնեն Սարաֆօղլու Սարգիս աղային* (ԴԱԼ. 182)։ *Այդ հրամանին ընդ-*

ուխը Յակոբ Նալեանի կը վերագրուի (ԳԱԼ. 181), բայց պէտք է համեմատել Նալեանի տեղակալութեան միջոցին (§ 1998), զի 1740'ին դեռ Կոլոտ կենդանի էր, բայց խօթացին և գործէ քաշուած։ Պետական հրամանին զօրութեամբ կուսակալը 25 հոգի կաթոլիկներէն չղթայակապ բանտարկեց, և նոյն իսկ զատկի օրը, 1740 ապրիլ 6'ին, ոստիկաններով եկեղեցիները գրաւեց և բանալիները յանձնեց հրովարտակին համեմատ (ՋԱՄ. Գ. 825)։ Սարաֆեան առաջնորդ կը գտնուէր այդ գործին վրայ, բայց նկատելով որ Դէկէն դէօրէ բամբաղանէ, տարէչէն դէօրէ խամթամէ, գործը լրանալէն առաջ կամացուկ մը Անկիւրիայէ մեկնեցաւ, և Կ-Պոլիս հասաւ 1741 տարւոյ սկիզբները, ուսկից ամիս մը առաջ Կոլոտ պատրիարք վախճանեցաւ (ԳԱԼ. 42)։ Սարաֆեանի այդ մեղմիւ ընթացքն ալ կը հաստատէ, թէ յայտնի կերպով հռոմէականութեան յարող մը չէր, այլ պարզապէս բախտին հետեւող մը, և իր հանգստութեան և օգուտին յարմար գետին մը փնտռող։ Զուարճալի պարագայ մը կը պատմուի Անկիւրիոյ կաթոլիկներուն մասնաւորական ատրճանը արտայայտող, որոնք սկսեր են եղեր Արեւագալի երգին, Երեք անձինք և մի բնութիւն խօսքերը (ԺԱՄ. 314) ուղղագրելով երգել, Երեք անձինք, երկու բնութիւն (ԳԱԼ. 40)։ Բայց պէտք չէ շատ զարմանալ, քանի որ հռոմէականք պաշտօնապէս ալ, Բղխումն ի Հօրէ՝ ի դէմս Որդւոյ բացատրութիւնը, Բղխումն ի Հօրէ և յՈրդւոյ փոխած են (ԺՄԱ. 24)։ Սարգիս չուզեց Անկիւրիա դառնալ, հակառակ Նալեան պատրիարքին ստիպումներուն, և միայն յանձն առաւ Զմիւռնիոյ շրջանակին մէջ Երուսաղէմի նուիրակութիւն կատարել՝ Շղթայակիրին կողմակով։ Իբրև ղոմս երէս այդ պաշտօնը վարեց, Փոքր-Ասիոյ զանազան կողմերը շրջագայելով, և 1744'ին Կ-Պոլիս դառնալով արդիւնքը Նալեան պատրիարքին յանձնեց, որուն ձեռքով Շղթայակիրէն Մուրհակ գայր վճարման։ Բայց ամէն կողմ ձայն էր ելած, թէ փոր Սարգսի լցաւ բաշխելով ուրիշ տալով, զոր Սարգիսի ներբողաբանը կ'ուզէ ջրել Շղթայակիրէ ստացած վճարման մուրհակին փաստով (ԳԱԼ. 45)։ Սակայն այդ մուրհակը ստացուած գումարը կը ցուցնէր, մինչ ժողովրդական ձայնը հաւաքուած գումարին մասին ելած պիտի ըլլայ։ Գաղատիոյ գործերուն դառնալով, Սարգիսի հրաժարելէն առաջ, առաջնորդ կը դրկուի Թովմաս վարդապետ Թամզարալեանը, և անկէ առաջ երբեմն իբր տեղակալ պաշտօնավարող Պետրոս վարդապետ Պահատուրեանը (§ 1988), պայմանով որ հաւատարիմ կերպով հետեւի Հայ ուղղափառ եկեղեցւոյ կանոններուն, առանց օտարամուտ ձեւեր խառնելու (ԳԱԼ. 171)։ Նոյն միջոցին անդ կը գտնուին Սիմոն եպիսկոպոս Տամատեան և Սուքիաս քահանայ մը լատին եպիսկոպոսի գործակատար, որոնք մասնաւոր պաշտպանութիւններ կը ճարեն պետական շրջանակներու մէջ, և արտաքին պաշտպանութեամբ պատրիարքարանի կը դիմադրեն մինչեւ 1744 (ԳԱԼ. 191)։ Ըստ մըն ալ կայ թէ հռոմէականք յաջողած ըլլան չորս եկեղեցիները նորէն գրաւել, Պահատուրեանի ակրութեամբ կամ կամակցութեամբ (ՋԱՄ. Գ. 825), սակայն այդ բանին ուրիշ կողմէն հաստատութիւն չենք գտներ։

**2002**. Նալեանի պատրիարքութեան բակիզբը, Կ-Պոլսոյ մէջ ալ նորէն սկսան կաթոլիկական շարժումներ և եկեղեցիներ գրաւելու գրգռութիւններ։ Կաթոլիկներէն ոմանց պետական շրջանակներու մէջ ստացած դիրքէն և ճարած բարեկամութիւններէն օգտուելով, ձայներ հանեցին թէ կառավարութիւնը երկու եկեղեցիներ պիտի շնորհէ իրենց, Սամաթիոյ Ս. Գէորգը և Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչը, և այդ պատրուակով ձեռնարկեցին Հաստատեալ Քաղկեդոն դէմս է Ժողովրդեան։ Գործին գլուխ կանգնողները՝ հռոմէական պատմագիրէն ալ անձինս և բնութեանց անձեր վըկայուելէ առաջ (ՋԱՄ. Գ. 825), մեզի աւելորդ կը դառնայ այդ ձգտումներուն ներքին չարժառիթը բացատրել։ Կաթոլիկներ մինչեւ իսկ յիշեալ եկեղեցիներուն համար իրենց կողմէն մեծաւորներ կ'որոշեն, և 1742 յուլիս 25'ին, Վարդավառի տօնին կը սպասեն մտնել և տօնախմբել եկեղեցին։ Անշուշտ Հայոց պատրիարքարանը հաճութեամբ պիտի չլսէր այդ զրոյցները, և ոչ ալ անոնց թրաքանանալը պիտի թոյլատրէր։ Դիտողու-

*թեան արժանի է, որ նոյն ատեն [illegible] կոչուած դրամ հաւաքողներ, և է [illegible] [illegible] [illegible] ըսելով դրամները իւրացնողներ, կը յանդգնին լուր տալ Նալեանի, թէ անա կաթոլիկներ պատրաստուած են [illegible] [illegible] [illegible]։ Պատրիարք և մեծամեծներ գործին էութիւնը կը հաստատեն ու պետական շրջանակներէ ստուգել կ'աշխատին, և այս կերպով խնդիրը մէջտեղ կ'ելնէ։ Կառավարութիւնը կը զայրանայ, զրոյց հանողները և կառավարութեան կողմէն սուտ լուր տարածողները փնտռել կու տայ․ շատեր կը ձերբակալուին, կը սուգանուին, կը պատժուին։ Միւս կողմէն փոխադարձ թշնամութիւններ ալ ասպարէզ կը գտնեն, և [illegible], [illegible] և [illegible] ազգին մէջ կը յաճախեն։ Այս ալ անշուշտ իրր իրենց դէմ հալածանք ցուցնել կ'ուզեն հռոմէականներ, սակայն չարժառիթը մէջտեղ ըլլալուն, անաչառ դատողութիւնը կը յայտնէ գործին իսկութիւնը, թէ Հայոց կողմէն կարգադրուած դաւանական հալածանք մը չէ։ Հռոմէական պատմագիրն ալ կը վկայէ, թէ [illegible] [illegible] էին մատնութիւն ընողներն ու տառապանք պատճառողները* (ՋԱՄ․ Գ․ 825)։ *Եթէ յարակից պարագաներն ալ քննենք և եղելութեանց առիթները ճշդենք, պէտք է նկատել որ արդէն 1741 տարիէն Վիլնէօվ մարքիզը, որ Վիլլանաւօ ալ կոչուած է խառնական հնչմամբ* (ԱՍՏ․ Բ․ 69), *դեսպանութենէ ելած էր, և իրեն յաջորդած էր, Միքայէլ-Անգեղոս Քասթէլլան կոմսը* (Michel-Ange comte de Castellane), *որ կերեւի թէ նոր ըլլալով չէր կրցած տարապարտ ձգտումներուն առջեւն առնել։*

**2003**․ *Պահ մը նորէն ձայները կտրուեցան, և կարծես թէ խաղաղութիւն տիրած էր, և ահա նորէն կաթոլիկներու կողմէ պահանջ կը յարուցուի, իրենց յատուկ եկեղեցիներ ունենալու, այս անգամ ուղղակի Նալեան պատրիարքին դիմելով։*

ԿԱԹՈԼԻԿ ՄԷՍԵՐ

*Կ'երեւի թէ պետական պաշտպանութենէն յուսահատած էին։ Շատ դիւրաւ հասկանալի էր որ պատրիարք պիտի չկարենար իրենց պահանջին գոհացում տալ, ուստի կը սպառնան որ Լատին եկեղեցիներու մէջ պիտի կատարեն հայկական ծէսերը։ Անշուշտ այդ խորհուրդը ծագում առած էր Լատիններուն գրգռութենէն, որոնք տեսնալով թէ իրենց Հայ հետեւորդները փափաք կը յայտնեն հայածէս արարողութիւններ ունենալ, և լատինածէս պաշտամունքներով չեն յագենար, անձերնին առած են իրենց եկեղեցիներուն մէջ հայածէս հանդէսներ կատարել տալ [illegible] [illegible], երգովք և սպասուք, քշոցօք և ծնծղայիւք, մինչ յառաջագոյն լատին զգեստով պարզ կամ թիւ պատարագներ միայն կը կատարէին։ Այդ Լատին զգեստին կիրառութենէն ծագում առած է՝ [illegible] [illegible] յորջորջումը, իբր զի լատին պատարագիչներուն շուրջառը կարճ է, և հազիւ մինչեւ ծունկերը կը հասնի։ Ուրիշ լատին սովորութիւն մըն ալ է, առանին մատուռներ բանալ ընտանեկան բնակութեանց մէջ, և նոյն իսկ հասարակ սենեակներու մէջ ու որեւէ սեղանի վրայ պզտիկ օծեալ վէմ մը դնելով, և երկու մոմեղէն վառելով, վայրկենական և պատահական մատուռներ կազմել։ Լատիններ այդ միջոցները ձեռք առած են իրենց օգտին համար, և Հայ կաթոլիկներ միամտութեամբ հետեւած են անոնց առաջարկներուն, և այս կերպով ոչ միայն Ղալաթիոյ Ս․ Գէորգ և Ս․ Պետրոս և Բերայի Ս․ Անտոն լատին եկեղեցիներուն մէջ, այլ և նշանաւոր անձանց տուներուն, և Անկիւրացւոց կեդրոնն եղող Սօվճու խանչուկային մէջ եկեղեցական հանդիսաւոր պաշտամունք սկսած են կատարուիլ հայածէս պայմաններով։ Լատիններուն մտածած երկու կերպերն ալ պետական օրէնքներուն կ'ընդհարէին, զի հաւասարապէս արգելեալ էր օտարազգիներու հովանաւորութեան ներքեւ մտնել, և անհրաժան հոգեւորական պաշտամանց տեղեր բանալ։ Հազիւ թէ եղելութիւններ լսուեցան, թագաւորական և եպարքոսական հրամաններ արձակուեցան օրինազանցութիւնները արգելելու և օրինազանցները պատժելու, և ահա նորէն առիթ տրուեցաւ ձերբակալութեանց և բանտարկութեանց, տուգանաց և աքսորանաց, որոնք ուրիշ պատճառ չունէին, բայց եթէ Հայ կաթոլիկներուն ըմբոստութիւնը՝ Լատիններէ հրապուրուելով, որոնք իրենց օ-*

տարաձայնութեան արտօնութենէն օգտուելով անփորձ և անպատիժ կը մնային, և չէին խղճեր իրենց հետեւողները պետական օրէնքներու ցասումին մատնել։ Ուրովհետեւ գործը պարզապէս օրինական էր, Նալեան պատրիարք անձամբ Քասթէլլան դեսպանին դիմեց, և գործը հասկցուց, և դեսպանը համոզեց ձեռք քաշել [illegible]։ Ասոր վրայ Լատին եկեղեցականներ լուր հանեցին, թէ դեսպանը պատրիարքէն կաշառուած է, բայց Գաղղիոյ դեսպան մը կաշառելու պէտք եղած միջոցները՝ Հայոց պատրիարքին ձեռնհասութենէ վեր էին, և օրէնքին հասկացողութիւնն էր որ ազդեց դեսպանին միտքին վրայ։

**2004**. Անկիւրիոյ մէջ ալ նմանօրինակ ձեռնարկներ սկսած էին, ուստի պէտք եղաւ այնտեղ ալ կարեւոր հրամանները հասցնել, և զօրաւոր ու վստահելի առաջնորդ մըն ալ ղրկել.

ԱՆԿԻՒՐԻՈՅ ԴԷՊՔԵՐԸ

ուստի Նալեան պատրիարք Նիկոմիդիայէ Անկիւրիա փոխադրեց Աթանաս Կոստանդնուպոլսեցի եպիսկոպոսը, որ իւր աշակերտներէն էր։ Զամչեան, որ Անկիւրիոյ չորս եկեղեցիները նորէն գրաւուած կ'ենթադրէ հռոմէականներէն, Աթանասի ձեռքով նորէն ետ առնուած կ'ըսէ (ՋԱՄ. Գ. 826)։ Բայց ուրիշներ այդ պարագան կ'անգիտանան (ԳԱԼ. 191), և միայն Պահառուրեանի և Տամատեանի ձեռօք եղած օրինազանց գործողութիւնները կը յիշեն։ Աթանաս [illegible], պարտաւորուեցաւ խստութեան դիմել, և հրովարտակին զօրութեամբ Անկիւրիայէ հեռացնել և Սամսոն աքսորել տուաւ Ումուտեան Սիմոն եպիսկոպոսը, Պահառուրեան Պետրոս և Մէհտէրեան Գէորգ վարդապետները, և Մուրատ Մելքոնեան, Խուպիար Մելքոնեան, Արթին Իփրիմեան, Սահակ Վարդերեսեան, Սահակ Թավիրճեան, ու Հաճի Ֆէրաշաթ գլխաւորները (ԳԱԼ. 191)։ Ասոնք երեք ամիս Սամսոն մնալէ ետքը Կոստանդնուպոլսոյ թիարանը փոխադրուեցան, և երեք ամիսէ ալ անկէ ազատեցան կաշառքով ու սուգանքով։ Սիմոն եպիսկոպոսը փութաց Հռոմ ապաւինիլ, Պահառուրեան և Մէհտէրեան վարդապետներ քիչ ետքը Կ-Պոլսոյ մէջ մեռան, իսկ աշխարհականներ իրենց քաղաքը դարձան (ՋԱՄ. Գ. 326)։ Զաքրճեան Կարապետ վարդապետն ալ, թէպէտ ձերբակալուեցաւ, բայց խոյս տալով Վենետիկ ապաւինեցաւ (ԳԱԼ. 192)։ Ինչպէս ամէն չարժումէ ետքը, այս անգամ ալ միջոց մը խեղդուեցան կաթոլիկական վէճերը, մինչև անոնց նորէն արծարծուիլը։

**2005**. Երուսաղէմի մէջ Շղթայակիրին համար սոսկալի հարուած մը եղաւ Կոլոտի մահուան գոյժը։ Վաստակաբեկ ծերունին անոր խօսքովը և անոր վստահանալով յանձն առած էր

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԳՈՐԾԵՐ

դժուարին պատրիարքութիւնը, և մինչեւ այն օրն ալ անկէ ստացած էր պէտք եղած օգնութիւնները, և իւր ծանրացեալ և ծերացեալ տարիքին մէջ այդ նեցուկէ զրկուիլը՝ իրեն համար անփոխարինելի կորուստ մըն էր։ Եթէ պարագայ մը կրցաւ զինքն սփոփել, Կոլոտի մահուան գոյժին հետ Նալեանի պատրիարքութեան աւետիսին միասին հասնիլն էր։ Նալեան կատարելապէս Կոլոտի հոգւոյն ժառանգն էր, և կարողութեամբը յայտնուած ու հռչակուած էր, Երուսաղէմ եղած և Երուսաղէմի գործերով զբաղած ըլլալով՝ կացութեան մօտէն տեղեակ էր, և պէտք եղածը հաղորդելու և իմացնելու համար Շղթայակիր յոգնելու պէտք չունէր։ Շնորհաւորեց Նալեանի պաշտօնը, խնդրեց որ Երուսաղէմ ղրկէ Կ-Պոլիս մնացած հրովարտակներուն բնագիրները, և Նալեանի շնորհեց Կոլոտէ Երուսաղէմի կըտակուած հարուստ զգեստներն ու սպասները։ Սակայն Նալեան չընդունեցաւ, և անմիջապէս Երուսաղէմ ղրկեց Սեղբոս ամիրային հետ, որ կրկին անգամ ուխտի կ'երթար որդւովք և ընտանեօք, և աւանդները տարաւ Շղթայակիրին յանձնեց 1741 յուլիս 18'ին (ԱՍՏ. Բ. 66)։ Նոյն միջոցին Ս. Փրկչի վանքը յարձակում կրեց Արաբացի յելուզակներէ, որոնք պատերն ալ քանդած էին, սակայն ամենայն ինչ վերաշինուեցաւ դատաւորական քննութեամբ և վճիռով, որոնք կատարուեցան աթոռակալ Գաբրիէլ և Թարգման Պօղոս վարդապետներու ջանքով։ Բայց աւելի մեծ խնդիրը յուզուեցաւ Լատիններուն կողմէն, որոնք Պատանատեղ-

ւոյն չուրջը աւլող Աբրահամ Ապտուլլահեան վարդապետին վրայ յայձակած և գլուխը ճեղքած էին։ Գործը դատաւորական ատեանը ելաւ, երկար դատավարութիւն եղաւ, և Լատիններ պարտաւորուեցան, և Հայոց իրաւունքը գիրի առնուեցաւ։ Շղթայակիր պատրիարք Լատիններու հետ Կոլոտի և Վիլնէօվի օրով եղած յարաբերութիւնները յիշելով, և հին համերաշխութիւնը պնդել ուզելով՝ յատուկ գիրեր գրեց Գաղղիոյ Թագաւորին և վարչապետին, որ էր տակաւին նոյն Ֆլէօրի կարդինալը (§ 1996), Հռոմի կարդինալաց ժողովին, և Կ-Պոլսոյ Գաղղիական դեսպանին, որոնցմէ այս վերջինին միայն պատճէնը կը գտնուի 1742 հոկտեմբեր 26 թուականով (ԱՍՏ. Բ. 69-72)։ Կ'երեւի թէ օգտակար եղան այդ գիրերը, վասնզի չնորոգուեցան Լատիններու ոտնձգութիւնները, և Շղթայակիրը իւր վերջին տարիները օգտակար ըրաւ՝ Ս. Յակոբեանց մայրավանքին և տաճարին շինութիւնները ընդարձակելով և բարեզարդելով, և երեք ազգերու համաձայն գործակցութեամբ զըսպելով Բեթղեհէմի չուրջը եղող Արաբացիներու վայրագ և հարստահարիչ բռնութիւնները (ԱՍՏ. Բ. 76)։ Զանց կ'ընենք այդ գործերուն մանրամասնութիւնները, որ Երուսաղէմի յատուկ պատմութեան կը պատկանին։ Շղթայակիրը, որ իւր երկու Ամրտոլցի աշակերտակիցներէն երիցագոյն եղած կ'երեւի, աւելի երկարակեացն եղաւ, զի Աբրահամ Խոշաբեցի կաթողիկոսը և Յովհաննէս Բաղիշեցի պատրիարքը իրմէ շատ յառաջ կնքեցին իրենց կեանքը։ Թէպէտեւ խոր ծերութեան հասած, բայց գործունէութենէն դադարած չէր Շղթայակիրը, ինչչափ ալ զօրաւոր օգնականներ էին Թէոդորոս փոխանորդ, Գաբրիէլ աթոռակալ, Պօղոս Թարգման և Յովհաննէս գործակատար վարդապետները, որոնք արժանապէս փոխանակած էին Հաննայի կորուստը։

**2006.** Կիլիկիոյ աթոռին վրայ թողուցինք Յովհաննէս Հաճընցին, Տէր-Աղամ կամ Տէր-Աղամեան (ԴԻԻ. Դ. 720) մականուանեալը, որ 1727'ին աթոռ բարձրացած էր Գրիգոր Կեսարացի, Ուղուրլու մականուանեալին յաջորդ (§ 1960)։

**ԱՋԱՊԱՀԵԱՆ ՏՈՒՆ**

Յովհաննէս մինչեւ 1734 ապրած կը գրուի (ԴԻԻ. Դ. 721), սակայն 1731'էն իբր կաթողիկոս կը յիշատակուի Ղուկաս Աջապահեան (09 ՕՐԱ. 284), որ Աջպահեան և Աջպանեան ալ կը գրուի (ՍԻՍ. 219), ոչ իբրեւ հակաթոռ մը, այլ իբրեւ օրինաւոր կաթողիկոս Սսոյ մէջ, երբ Յովհաննէս կամովին քաշուած ու առանձնացած էր իւր հայրենիքը, Հաճընի Ս. Յակոբ վանքը։ Այդ կէտը չուտով կրնանք մեկնել աթոռակցութեան ձեւով, որ նորութիւն չէր մեր կաթողիկոսական աթոռներուն համար, և որ եւ է պատահական պատճառով մը կրնար գործադրուիլ։ Չենք կրնար ստուգել թէ ի՞նչ մտածմունքով կամ թէ ի՞նչ ստիպումով Յովհաննէս իրեն աթոռակից մը օծեց։ Բայց յիշատակարան մը կը պատմէ, թէ Կիլիկիոյ վերջին կաթողիկոսներ [illegible] [illegible] [illegible] աթոռին մէջ [illegible] [illegible], որով [illegible] [illegible] կը մնար (ԴԻԻ. Դ. 720), և աւելի հաւանաբար քահանայական սերունդի մը (ՍԻՍ. 219), որոց վերջինն էր Յուսիկ քահանայ Սսեցի, [illegible], և վախճանեցաւ 1748 յունուարին (ԴԻԻ. Դ. 720)։ Այս տէր Յուսիկի որդին էր Ղուկաս, և Յովհաննէս անկէ յորդորուելով և ծերացած ալ ըլլալով, դիւրաւ համոզուած է Ղուկասը առջեւ քաշել, ինքը հանգիստ վայելել, և հոգերը ուրիշի յանձնել։ Այս բանը ըրած է մանաւանդ՝ երբ կացութիւնը դըժուարին էր, և գործերը խառնակ։ Ղուկասի անձն ալ հետաքրքրական դարձած է իւր ազգատոհմին պատճառով, զի Աջապահեանց տուն մը իրականութիւն է Սսոյ մէջ, և հռչակաւոր եղած է Սսոյ աթոռը դար մը և աւելի իւր սերունդին մէջ պահած ըլլալուն համար, այլ ծագումը առեղծուածական եղած է։ Եփրեմ կաթողիկոս Աջապահեանց տոհմէն՝ կ'ուզէ իբր նախահայր ցուցնել Հեթում Բ'ի եղբայր և Լեւոն Բ'ի որդի Յովհաննէս եպիսկոպոս մը (ԱՋԱ. 54), և անկէ սկսելով կը կազմէ Աջապահեան սերունդ մը, տէր Եղիազար, Յովհաննէս եպիսկոպոս, տէր Եղիազար, մահտեսի Մինաս, տէր Սահակ, տէր Եղիազար, տէր Յուսիկ,

*տէր Մարկոս, և վերջապէս տասներորդ Աջապահ, ինքն Եփրեմ կաթողիկոս* (ԱԶԱ. 64-77)։ *Բայց արքայազարմ Յովհաննէս եպիսկոպոս մը, միայն Հեթում Ա'ի եղբայրը կայ, նա ալ կուսակրօն մնացած է* (ՍԻՍ, 219), *որով հիմէն կը խախտի Աջապահեան Եփրեմի կարծիքը, և չկրնար ալ ընդունուիլ ենթադրեալ Յովհաննէսին թոռան Թոռը կոչուած Մինասին գոյութիւնը* (ՍԻՍ. 211)։ *Ուրիշ գրութեամբ Աջապահեաններու սկզբնաւորութիւնը կը հանի Մուսաբէգեանցի ժամանակին, երբ Լուսաւորչի աջին անյայտանալէն ետքը, առձեռն մնացած երեք աջերը, «Սեղբեստրոսին», «Նիկողոսին» և «Պօղոսին», և Վահկայ Ս. Նշանը, կաթողիկոսին ձեռքէն կ'առնեն* (ՍԻՍ. 539), *և կը յանձնեն Հեթում Խազենց անձի մը պահպանութեան, մականուանեալ Սպիտակ, որ յետոյ քահանայացած, և Սպիտակ Երէց անունով ճանչցուած է* (ՍԻՍ. 540)։ *Նոյնին կը յանձնուի Կարապետ Եւդոկիացիին մէջտեղ հանած Լուսաւորչի աջն ալ* (§ 1478)։ *Շահսուարի արշաւանքին առթիւ Աջապահը այդ աջերը Կոպիտառ կը փախցնէ 1468'ին, և միւս տարին Սիս կը դարձնէ* (ՍԻՍ. 540), *բայց տարիէ մը կը վախճանի 1470'ի ժանտամահէն* (§ 1489)։ *Դար մը և աւելի ետքը 1598'ին Սատուրճիի արշաւանքին առթիւ* (ՍԻՍ. 228), *կը յիշուին Ղազար քահանայ լուսարար սուրբ Աջերոյն և բարեպաշտ Մինաս մը, որ աջերը Ատանա կը փախցնեն, ուսկից ետ կը բերուին 1601'ին Յովհաննէս Այնթապցի կաթողիկոսին ձեռքով* (ՍԻՍ. 540)։ *Շատ հաւանական կ'երեւի որ այս վերջիններ վերոյիշեալ Սպիտակ Երէցին սերունդէն ըլլան, և Աջապահեան տոհմին շարունակութիւնը նկատուին, որուն յաջորդութիւնը գծուած չէ։ Միայն թէ Ղուկաս կաթողիկոս, որուն վրայ կը խօսինք, որդի է Յուսիկ քահանայի* (ՍԻՍ. 216), *զոր յիշեցինք արդէն, և կը կարծուի թոռն Եղիազարի, որ թոռան թոռ կը սեպուի դարձեալ Եղիազար քահանայի մը, ուսկից վեցերորդ ծնունդ կ'ըլլայ Ղուկաս* (ՍԻՍ. 219), *որ է շուրջ 120—130 տարուոյ միջոց մը, այնպէս որ անհնին չէր ըլլար Աջապահեանց ծանօթ նախահայր՝ Եղիազար քահանան նոյնացնել վերը յիշուած Աջերոյն լուսարար Ղազար քահանային հետ, և այսպէս Աջապահեանց տոհմին նախահայր ճանչնալ Սպիտակ Երէց կոչուած Խազենց Հեթումը։ Եփրեմի ազգաբանութեան մէջ ալ կը յիշուին Եղիազար և Յուսիկ քահանաներ, որով այդ անուններուն շուրջը աւանդական յիշատակ մը եղած ըլլալը կը հետեւի, միայն խնդիրը անորոշ կը մնայ Աջապահեան տան նախահօր ինքնութեան վրայ։ Այսչափ ինչ միջանկեալ կերպով Աջապահեանց ծագումին վրայ։*

**2007.** *Ազգատոհմին հնութիւնը, անոր պաշտօնին նուիրականութիւնը, և մէջէն քահանաներ և եպիսկոպոսներ եղած ըլլալը, զօրաւոր ազդեցութիւն կուտային Աջապահեաններուն,*

ՂՈՒԿԱՍ ԱՋԱՊԱՀԵԱՆ

*այնպէս որ զարմանալի պէտք է երեւի, որ 1441'էն 1731, երեք դար ժամանակի մէջ, որոշ դեր մը խաղացած ըլլալնին պատմուած չէ, երբ Կիլիկիոյ աթոռն ալ շարունակ շփոթութեանց և անկարգութեանց մատնուած էր։ Բայց վերջապէս առիթը կը ներկայանայ, թէպէտ չենք գիտեր թէ ինչ և ինչպէս, և Յուսիկ Աջապահեանի որդին Ղուկաս եպիսկոպոս՝ Յովհաննէս կաթողիկոսէ յառաջ կը կոչուի, կամ թէ Ղուկաս ինքն կաթողիկոսը կը պարտաւորցնէ, և աթոռակից կաթողիկոս կ'օծուի։ Կոնդակները կը զօրացընեն ըսինք, զի Յուսիկի ութը զաւակներէն երեքը եկեղեցականութեան մէջ յառաջացած էին, և միւսներն ալ դիրքի տէր էին, և ազգատոհմը քաղաքին և վիճակին մէջ՝ թիւով և գործով ազդեցութիւն կը վայելէր։ Ղուկաս 1731'է 1734 իբր աթոռակից կը նկատուէր, թէպէտ Յովհաննէս Տէր-Ադամի գործէ քաշուած ըլլալովը, իբր բուն աթոռակալ կը գործէր, և անոր համար անխտիր թէ* 1731 (ՕՅ ՕՐԱ. 274), *և թէ* 1734 *տարին* (ՍԻՍ. 219), *իբրեւ Ղուկասի գահակալութեան թուական կը նշանակուին։ Իւր գործունէութենէն պատմելիք չունինք, տեղեկութեանց պակասութեան պատճառով։ Աջապահեանք անգամ մը որ կաթողիկոսութիւնը ձեռք անցուցին, զայն այլեւս իրենց տոհմէն դուրս չհանելու համար մտածեցին կանուխէն յաջորդնին օծել։ Այսպէս Ղուկաս իւր եղբայր Միքայէլը աթոռակից օծեց իւր կենդանութեան,*

որուն թուականը որոշ յիշուած չէ, այլ 1737'ին սկիզբները կամ քիչ առաջ կը կարծուի, զի նոյն տարին հոկտեմբեր 18'ին Միքայէլը իբր կաթողիկոս Կ-Պոլիս հասած կը գտնենք, և Իսկիւտարի Երուսաղեմատան մէջ իջեւանած Շղթայակիրի մօտ (ԱԶՏ. Բ. 53)։ Մեր տեսութեամբ պարզապէս Կիլիկիոյ աթոռին գործերուն համար եկած կ'ըլլայ Միքայէլ, զի չենք կարծեր թէ էջմիածնական վիճակներէ մաս մը իւրացնելու միտքեր ունեցած ըլլան Սսեցիները, քանի որ ասիկայ իրենց հնար պիտի չըլլար Կոլոտի պատրիարքութեան օրով։ Ղուկասի մահը հանդիպած է միեւնոյն 1737 տարին, այլ տապանագիրին պատճէնին մէջ ամսոյն անունը անընթեռնելի մնացած է, միայն օր ըՔ–Ռ–– ԵՐԵՔՆ (ՍԽՍ. 216) կրնայ մեզ մեկնութեան մը առաջնորդել։ Հարկաւ մահը տարւոյն առաջին ամիսները չէր, թէ ոչ Միքայէլ չէր կրնար մեկնիլ, իսկ վերջին ամիսներուն մէջ ամսոյն ԵՐԵՔՆ, չաբաթ կը հանդիպի սեպտեմբերին և դեկտեմբերին, և սեպտեմբերն ալ դուրս կը թողունք, խորհելով որ հոկտեմբեր 18'ին Կ-Պոլսոյ մէջ լսուած պէտք էր ըլլար, և ամենայն հաւանականութեամբ 1737 դեկտեմբեր 3'ին շաբաթ օր կը դնենք Ղուկասի մահը, երբ եղբայրն ու կաթողիկոսակից յաջորդը Կ-Պոլիս կը գտնուէր։ Անշուշտ Միքայէլ փութացած է մեկնիլ և 1738'ին սկիզբները իւր աթոռը դառնալ, կաթողիկոսութեան տէր կանգնելու համար։

**ԱՆՏՈՆԵԱՆՔ ԵՒ ԲԵՐԻԱ**

**2008.** Պատմութեանս կարգին յիշեցինք, թէ ինչպէս Երուսաղէմի խնդիրին առթիւ՝ Հայոց պատրիարքարանին և Գաղղիոյ դեսպանատան մէջ ստեղծուած մտատարութիւնը, երկկողմանի զիջողութեամբ մեղմացուցած էր կաթոլիկական վէճերը, որով եթէ մէկ կողմէն մեծ խնդիրը յաջողապէս վերջացաւ (§ 1996), միւս կողմէն ալ կաթոլիկներու դէմ հրամաններ և խստութիւններ չկրկնուեցան, և կուսակալներ ալ ազատութիւն ունեցան հաչտարար և խաղաղարար ձեւերու հետեւիլ։ Ծիշդ այդ պարագաներէն օգտուելով Բերիոյ մէջ կաթոլիկներ կուսակալի հրամանով եկեղեցի մը ձեռք ձգեցին (ԴԻԹ. 83) 1738 դեկտեմբեր 30'ին (ՄԽԻ. 463), և ազատարար պաշտօն վարելու արտօնուեցան, և մինչեւ իսկ Աբրահամ Արծիւեան եպիսկոպոս, որ մինչեւ այն ատեն Անտոնեանց մօտ Քրէյմի Ս. Փրկիչ վանքը կ'ապրէր, Բերիա հրաւիրելու համարձակեցան։ Այդ շարժումներուն ատեն Բերիոյ կաթոլիկներուն գլուխը կը գտնուէր հայր Յակոբ Յովսէփեան, Մուրատեան եղբայրներէն մին, որ Անկիւրիայէ դառնալէն ետքը (§ 1988) Բերիա եկած էր իւր անբաժան ընկերին հայր Իսահակ Բարսեղեանի հետ։ Անդին Լիբանանի վանքին մէջ՝ հիմնադիր և աբբահայր Աբրահամ Մուրատեան, իւր վատակարեկ կեանքը կը կնքէր 1738 յուլիս 15'ին 75 տարեկան (ԱՆՏ.)։ Թէպէտ յաջորդութիւնը ամենայն պատշաճողութեամբ իւր եղբօր՝ հայր Յակոբի կ'իյնար, սակայն նա չատոնց վանական կեանքէ հեռու մնացած, ժողովուրդին մէջ կը դեգերէր, և յարմար չսեպեցին զայն վանք դարձնելով կաթոլիկական գործունէութիւնը տկարացընել։ Վանքին մէջ յառաջադէմ դիրք ստացած էին Արծիւեանի երկու քեռորդիներ՝ հայր Պետրոս և հայր Գրիգոր Ներսէսեաններ, որոնք Նիփօթ ալ կոչուած են, իբրեւ Արծիւեանի քեռորդիներ։ Ասոնց երիցագոյնը հայր Պետրոս՝ միաբանական ընտրութեամբ աբբահայր Աբրահամի յաջորդ նշանակուեցաւ, անոր մահուանէ տարի մը ետքը, և Արծիւեան իբր թեմակալ առաջնորդ ընտրութիւնը հաստատեց 1739 նոյեմբեր 1 պաշտօնագրով (ԴԻԹ. 85)։ Անցողակի յիշենք, թէ այդ միջոցին Անտոնեանք որոշեցին ժամանակաւոր աբբահայրներ ունենալ, իրենց օրդեգրած Մարոնի Անտոնեաններու կանոնին համաձայն։ Աբրահամ հիմնադիրին յաջորդը Պետրոս՝ եռամեայ պայմանաժամով ընտրուեցաւ։ Արծիւեանի դառնալով, նա խնդութեամբ ստացաւ Բերիացւոց հրաւէրը և ցուցուած վստահութիւնը, և փութաց Բերիա հասնիլ 1739 դեկտեմբեր 4'ին (ԴԻԹ. 85), բայց միշտ գաղտնի՝ և երեք ամիս թաքչած ապրելով, մինչեւ որ ամէն կողմէն ապահով ըլլար նորէն արկածի մը չի հանդիպելու համար (ԴԻԹ. 86)։

**2009.** Արծիւեանի պաշտօնապէս կաթոլիկութեան յարիլը մինչեւ 1720 թուական

կրնանք բարձրացնել, համաձայն նախատական երգի մը թուականին, որ գրուած է Սիմէոն վարդապետէ մը՝ հրամանաւ և հաւանութեամբ Հաճընցի Յովհաննէս կաթողիկոսէն, ինչ որ կը ցուցընէ, թէ անհիմն են Հաճընցին կաթոլիկ կարծեցնելու համար հռոմէականաց ջանքերը (ԴիԹ. 33)։ Աբրահամ կանուխէն սկսած էր գործնական գաղափարներ մշակել, Հայ կաթոլիկութեան ինքնուրոյն դիրք մը ստեղծելու, և սեփական կացութիւն հաստատելու համար։ Այդ մասին նախնական ներշնչումները ստացած էր իւր իսկ վարդապետէն, Թասպասեան Մելքոն եպիսկոպոսէն, որ առաջին անգամ այդ միտքը յղացած էր, զի ինքն եղէ առաջնորդ և պատրիարք ի Սիւրոյ երկրոց Ասիային (ՋԱՄ.Գ.758)։ Հետեւաբար թէպէտ այդ միտքին համար իրական ձեռնարկը Բերիա գալէն քիչ ետքը փորձեց, սակայն միտքը պէտք է կանուխէն պատրաստուած ըսել։ Կ-Պոլիս անցնիլ, և այնտեղ պատրիարքութիւն մը կազմել հնար չէր, մանաւանդ Կոլոտի մը պատրիարքութեան և Նալեանի մը փոխանորդութեան օրով։ Ինքն Կիլիկիոյ կաթողիկոսական սահմանին մէջ կ'ապրէր, և մտածեց Կիլիկիոյ կաթողիկոսութիւն մը կազմակերպել իւր կամքով։ Բերիացիք արդէն վարժ էին հակաթոռներ տեսնել իրենց մէջ. Դաւիթի և Ազարիայի ձեռնարկը նորոգած էր Պետրոս, և անոր հետեւանքէ կամ մեռնելէ ետքը Բերիական հակաթոռութիւնը ընդհատուած էր, և Աբրահամ մտածեց այդ պարագայէն օգուտ քաղել, պատմական եղելութեանց մասին այլայլութիւններ խառնելով և կանոններու հակառակ կերպեր ալ գործածելով։ Առաջին յարմարցուցածը Կիլիկիոյ աթոռին ենթադրեալ պարապութիւնն է, իբր թէ Ղուկաս Աջապահեան 1740 նոյեմբեր 26'էն հինգ ամսոյ յառաջ վախճանեալ, և աթոռն թափուր մնացեալ ըլլար վասն չհաւանութեան առաջնորդաց (ԱՂՔ.Ա.15), ինչ որ իւր ձեռնարկին ձեւ մը տալու պիտի ծառայէր (ԴիԹ.102)։ Մենք արդէն տապանագիրերէ քաղելով ցուցուցինք Ղուկասի մահը 1737 դեկտեմբեր 3'ին, և անկէ առաջ իւր յաջորդին Միքայէլի օծումը, և ասոր ալ 1740 նոյեմբեր չատ կանուխ Կ-Պոլիսէ իւր աթոռը եկած ըլլալը (§ 2008)։ Եթէ վասն չհաւանութեան առաջնորդաց աթոռը թափուր մնացած էր, Աբրահամի հնար պիտի չըլլար իրեն կաթողիկոսութիւնը պատրաստել, քանի որ իրեն կամակից և գործակից ոչ մի առաջնորդ և ոչ մի եպիսկոպոս չունէր և չունեցաւ, ոչ Բերիոյ թեմերէն և ոչ Կիլիկիոյ վիճակներէն։ Ինքն միայն էր Հայ կաթողիկոսէ ձեռնադրուած եպիսկոպոս մը, այն ալ հակաթոռ կաթողիկոսէ մը։ Անօրինակ յանդըգնութեամբ և Հայ եկեղեցւոյ մէջ չլըսուած ժպրհութեամբ, առանց ժողովի և առանց օրինական ընտրութեան, և լոկ քանի մը աբեղաներու և քահանաներու համաձայնութեամբ կաթողիկոսութիւն կը հրաչակէ, և երկու օտարածէս ընթերականերով և լատին եկեղեցւոյ մը մէջ 1740 մայիս 3'ին, չաբաթ օր, եպիսկոպոս կը ձեռնադրէ հայր Յակոբ Յովսէփեանը, իբր իրեն յաջորդ Բերիոյ վրայ։ Անկէ ետքը իւր ձեռնադրածին և օտարածէսի մը ընկերակցութեամբ յունիս 11'ին, չորեքշաբթի օր, կը ձեռնադրէ հայր Իսահակ Բարսեղեանը, իբր Թիլիսի եպիսկոպոս, և վերջէն նոյեմբեր 23'ին, կիրակի օր, իւր երկու ձեռնադրածներով, կը ձեռնադրէ Մելքոն Թուխմանեան վարդապետը, իբր Մամպոյ եպիսկոպոս։ Այսպէս կաթողիկոսանալու պէտք եղած եպիսկոպոսները ինքն իրեն պատրաստելով, 1740 նոյեմբեր 26'ին, չորեքշաբթի օր, երեք եպիսկոպոսներով իւր օծման և կաթողիկոսացման ծիսակատարութիւնները կը լրացնէ (ԱՂՔ.Ա.15, ԴիԹ.87), ինչպէս կը յայտնուի ձեռնադրեցին զիս կաթողիկոս գրելէն (ՄխԻ.463)։ Ասոնք են պատմական պարագաները, և բաւական են գործին ապօրինութիւնը հաստատել։

**ԱՐՏԻՒԵԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍ**

2010. Ուզեցինք մանրամասնեալ կերպով եղելութիւնները պատմել, որպէսզի տեսնուի, թէ ինչ կերպով պատրաստուած է հռոմէականներու կարծեօք կազմուած Լուսաւորչին հարազատ յաջորդութիւնը, և Հայաստանեայց եկեղեցւոյ օրինաւոր հայրապետութիւնը, և Ամենայն Հայոց ճշմարիտ կաթողիկոսութիւնը։ Հայաստանեայց հայրապետութեան հա

**ԱՐՏԻՒԵԱՆ Ի ՀՌՈՄ**

*բազատ յաջորդութեան՝ այլեւս Կիլիկիոյ աթոռին մէջ չըլլալը ապացուցին ընդունուած ճշմարտութիւն էր և է։ Եթէ այնպէս ըլլար ալ, Աբրահամ Կիլիկիոյ կաթողիկոս ալ չէ, այլ հակաթոռ կաթողիկոսէ մը ձեռնադրութիւն ստացած, ընտրողական պայմաններուն բոլորը ոտքի տակ առած, առանց կաթողիկոսութեան կաթողիկոսական գործեր կատարելու անկանոնութեան ներքեւ ինկած, և մանկական խաղ խաղալու պէս՝ ինքն իրեն երեք եպիսկոպոս չինած, և իւր չինած եպիսկոպոսներէն կաթողիկոսութեան օծում և աստիճան ստացած, և պարզ անձնախաբութեամբ գոհունակութիւն զգացած մէկն է։ Խաղը ամբողջացնելու համար ալ՝ ինքն Կիլիկիոյ աթոռին պարապութիւնը կեղծած է, իսկ հռոմէականներէն շատեր իրենց խիղճը հանդարտելու համար՝ պապէն ստացուած հաստատութեան փաստին կը դիմեն։ Այդ մասին իրենց ուրիշ բան չենք կրնար ըսել, բայց եթէ պապն ալ, իբր հայրապետ մը, կրնայ իւր շրջանակին մէջ աթոռներ հաստատել կամ ջնջել, և իրեն հպատակութեան ներքեւ հայածէս աթոռ մըն ալ ստեղծել որեւէ անունով կամ աստիճանով։ Միայն թէ այն ինքնաստեղծ աթոռը՝ ոչ հայկական աթոռի մը յաջորդութիւն է, ինչպէս կը կարծեն (Դիթ. 89), և ոչ ալ հայկական օրինաւորութեամբ կազմուած աթոռ մըն է, ինչպէս կը պատմեն (Դիթ. 90), այլ Հռոմի պապին ազատ կամքէն բղխած հռոմէական ստեղծագործութիւն մըն է։ Աբրահամ ինքն ալ յառաջ բերուած ճշմարտութեանց գիտակ եղած պիտի ըլլայ, որ կարծուած կաթողիկոսութենէն անմիջապէս վերջ 1740 դեկտեմբերին Բերիայէ կը մեկնի Հռոմ երթալու միտքով (ԱՂՔ. Ա. 16), բայց դիւրութիւններ չգտներ մտադրութիւնը անմիջապէս գործադրելու։ Միւս կողմէն իւր ձեռնարկին լուրն ալ տարածուելուն վրայ՝ դժպհի հետեւութենէ և նորանոր արկածէ վախնալով, կը փութայ նորէն Անտոնեանց Քրէյմի վանքին առանձնարանը ապաւինիլ՝ Մարոնիներու պաշտպանութեան ներքեւ։ Այնտեղ կը մնայ Աբրահամ մինչեւ 1741 սեպտեմբեր 30, ուղեւորութեան կերպերը ու պէտքերը մտածելով։ Յիշեալ օր կ՚իջնէ Սուրիական Տրիպոլիս, ուր հիւրընկալութիւն գտած էր Աւրատ կղզիէ ազատելէն ետքը (§ 1940)։ Նոյեմբեր 3՚ին նաւ կը մտնէ, և 30՚ին Կիպրոս կը հասնի, ուր կը մնայ մինչեւ 1742 յունուար 7, և նորէն նաւագնացութեամբ ու ալեկոծ ծովով, և Սարտենիա կղզին հանդիպելով Մարսիլիա կը հասնի մարտ 10՚ին։ Քառասնօրեայ մաքրարանը սպասելով ապրիլ 19՚ին դուրս կ՚ելլէ, և երկուքուկէս ամիսի չափ ևս այնտեղ անցընելով յուլիս 2՚ին կը մեկնի նաւով, և Լիվոռնօ հանդիպելով, ու Անքոնա անցնելով (Դիթ. 94-96), Հռոմ կը մտնէ 1742 օգոստոս 11՚ին (Դիթ. 97), կամ լաւ եւս 13՚ին (ԱՂՔ. Ա. 16)։*

**ԱՆՏՈՆԵԱՆՔ ԵՒ ՄԽԻԹԱՐԵԱՆՔ**

**2011**. *Հռոմի մէջ կատարուած ձեւակերպութիւններուն չանցած, յառաջ բերենք Անտոնեանց և Մխիթարեանց միջեւ տեղի ունեցած յարաբերութիւնները։ Երկու միաբանութիւններ իրարու անծանօթ չէին, թէպէտ ծովով ու ցամաքով բաժնուած։ Մխիթար Բերիա եղած էր (§ 1839), այնտեղ կաթոլիկութեան և կաթոլիկ վանականութեան հետ շփուած էր, Մուրատեան եղբայրներու հետ ծանօթութիւն և յարաբերութիւն ալ անշուշտ ունեցած էր, և միաբանութիւն մը կազմելու նպատակին հետ Լիբանան քաշուելու խորհուրդն իսկ ունեցած էր կանուխէն (Մխի. 156), և պարզապէս հանդիպմամբ Արեւմուտք ինկած էր (§ 1860)։ Վերջին ատեններ երկու Անտոնեաններ ալ Յակոբ և Իսահակ հայրեր՝ երկու տարիէ աւելի Վենետիկ մնացած էին (§ 1988), և այս ամէնը Անտոնեանց և Մխիթարեանց մէջ փոխադարձ յարաբերութիւններու առիթներ կը կազմէին։ Յակոբ և Իսահակ վարդապետներու Անկիւրիայէ Լիբանան գալերնուն առթիւ բերած գրաւիչ տեղեկութիւնները, Արեւմուտքի հրապուրիչ անունը, և ամէն Հայ եղողի սիրտին մէջ բորբոքող զարգացման զգացումը, Անտոնեանց մէջ ալ փափաք ծնուցած էին, որ իրենք ալ այդ ուղղութեան դիմեն։ Ամէնէն գործնական ձեւը գտնուեցաւ երկու միաբանութիւնները ձուլել, նոյն իսկ Մխիթարի ձեռքին տակ, իբրեւ արեւմտեան գործերու փորձառու մեծաւոր մը։ Այդ միտքը իրականացնելու հա-*

մար մտածեցին, փոխանակ Մարոնի Անտոնեաններու կանոնին՝ Մխիթարի կազմած կանոնագիրը ընդունիլ, Վենետիկէ մէկ երկու միաբաններ Լիբանան բերել՝ նոյն կանոնին գործադրութեան հսկելու համար, և Քրէյմի վանքն ալ Մխիթարի բարձր իշխանութեան ենթարկել։ Այդ նպատակով երեք նամակներ կը գտնուին Մխիթարի ղրկուած։ Արծիւեան կը գրէ 1741 յուլիս 18'ին, ուր առաջ իր կրածները կը պատմէ ընդարձակօրէն, Անտոնեանց հաստատութիւնը իր գործը կը ցուցնէ, և վրայ կը բերէ վերոյիշեալ առաջարկները (Մխ. 462)։ Յակոբ Յովսէփեան, Բերիոյ եպիսկոպոս եղած (§ 2010), կը գրէ յուլիս 22'ին իբր Մխիթարի անձնապէս ծանօթ մը (§ 1988), և իբր հիմնադիրներուն վերջին մնացորդը, զի Մինաս ալ վախճանած էր այն օրերը. հաւանութիւն կը յայտնէ միեւնոյն առաջարկներուն, և անոնց ընդունելութիւնը կը յանձնարարէ (Մխ. 465)։ Աբբահայր Պետրոս Ներսէսեան, նորընտիր մեծաւորն ալ (§ 2009), կը գրէ սեպտեմբեր 3'ին, և միեւնոյն կէտերը առջեւ կը դնէ, և թէպէտ Արծիւեանի ալ գրած պուլլը կը յիշէ, բայց գործին իբր տէր կը ցուցնէ ինքզինքը, որպէս մին+ հաճեցան+ և գրեցան+ ըսելով (Մխ. 466)։ Արծիւեանի նամակէն կը քաղուի թէ վանքին մէջ 16 կարգաւորք կան, թէ 3 կարգաւորներ եպիսկոպոս եղած և հեռացած են, եպիսկոպոս մը ու քահանայ մը ու եղբայր մը վախճանած են, և միայն երկու եպիսկոպոս կը մնան դուրսը (Մխ. 463), որ են Յակոբ Յովսէփեանը և Իսահակ Բարսեղեանը (§ 2010), իսկ երրորդ մեռնող եպիսկոպոսի անունը անծանօթ կը մնայ։ Ներսէսեանի նամակին մէջ կը յիշուին 11 հայր քահանայ, 3 եղբայր կրօնաւոր և 4 նորընծայ (Մխ. 466), ոչ նոր ընծայեալի, այլ ընծայացուի իմաստով։

2012. Այդ նամակները յայտնի չէ թէ ով տարաւ Եւրոպա, զի Մխիթար 1742 փետրուար 9'ին միայն կը պատասխանէ Յովսէփեանի, և միանգամայն Արծիւեանի ալ գրած պուլլը կը յիշէ, բայց այս գիրը տեսնուած չէ։ Մխիթար Անտոնեանց առաջարկը կը մերժէ

**ՄԽԻԹԱՐԻ ՄԵՐԺՈՒՄԸ**

պատճառելով, թէ իրենց կանոնը կը պահանջէ պատանեկութեան հասակի մէջ եղող աշակերտներ առնել, կրթել և փորձել, և յետոյ միաբան ընդունիլ, և ոչ զճեօրս վան+ մի կրօնաւորաց։ Կ'աւելցնէ թէ իրենց միաբանները պէտք է կատարեալ գիտութիւն ունենան, և ուսանելով հասնին ի կատարելութիւն գիտութեան, իսկ կրօնաւորք մանկն Աթբանաւոր տարիքնին առած են, և որդէ՞օ մարթ է հասու առնել զնոսա կատարեալ գիտութեան (Մխ. 470)։ Մխիթարեանց ժառանգական մեծամտութեան արմատը կը տեսնուի Մխիթարի այս պատասխանին մէջ, ինքզինքնին կատարեալ գիտութեան տիրապետած և ուրիշները ուսումէ զուրկ մնացած կարծելով։ Անտոնեանց առաջարկը ձուլումն էր երկու միաբանութեանց, և ոչ նորէն աշակերտութեան մտնել, և Մխիթար ինքն ալ, ոչ պզտիկ պատանիներով, այլ հասունցած անձերով, նոյն իսկ ձեռնադրուած վարդապետներով կազմած էր իր նախնական խումբը։ Հետեւապէս արուեստակեալ ձեւ ունէր Մխիթարի պատասխանը, և խնդիրին հիմը այլայլելով, մերժումը կերպաւորել կ'ուզէր։ Արծիւեանի ուղղուած նամակն ալ անոր ձեռքը հասած է Հռոմ եղած ատենը (Մխ. 468), իսկ Ներսէսեանի նամակին պատասխանը մէջտեղ չէ երեւցած, ուրիշ տեղ մըն ալ յիշուած չէ. և կը սիրենք ենթադրել թէ Անտոնեանց աբբահօր նամակը անպատասխանի թողլու չափ առջեւ գացած չէ Մխիթար։

2013. Արծիւեան 1742 օգոստոս 13'ին Հռոմ հասնելուն (Դիթ. 170), մեծ հոգածութեամբ և պատուասիրութեամբ ընդունուեցաւ պապէն, որ էր Բենեդիկտոս ԺԴ Լամպէրթինի (Lambertini), գիտնական և գործունեայ ճանչցուած անձ մը։ Արդեօք Արծիւեան կըրցա՞ւ իրօք Բենեդիկտոսը խաբել իր ընտրութեան և աստիճանին օրինաւորութեան համար, կամ թէ Բենեդիկտոս կրցա՞ւ ներքնապէս համոզուիլ իրեն ներկայացուած պարագաներուն վրայ, չենք ուզեր խնդիրի նիւթ ընել. միայն յայտնի է թէ պապը ուզեց առիթէն օգուտ քաղել և պապութեան նոր յաղթանակ մը կազմել, Հայոց եկեղեց-

**ԱՐԾԻՒԵԱՆԻ ՀԱՍՏԱՏՈՒԻԼԸ**

*ւոյն կաթողիկոսին իրեն ոտքը գալէն և իր ոտքը համբուրելէն* (Դիւթ. 175)։ *Խաբուիլ ուզելուն կամ իրաց իսկութիւնը մէջտեղ չհանելուն ամէնէն մեծ նշանն է, որ Հռոմի սովորական եղող երկար քննութիւնները զանց եղան, և արագօրէն ընդունելութեան ձևակերպութիւնները հրամայուեցան։ Դըժբախտաբար Աբրահամ հիւանդացաւ, հիւանդութիւնը ծանրացաւ և երկարեցաւ, և հարկաւ գեղեցիկ առիթին կորուստէն վախնալով՝ պապը ամէն խնամք հրամայեց, անձամբ ալ Ս. Մարիամ Եգիպտացի եկեղեցւոյն կից Հայոց հիւրանոցը այցելեց։ Հազիւ թէ Աբրահամ հիւանդութենէն կազդուրուեցաւ, իւր պաշտօնական խնդրագիրը մատոյց* (Դիւթ. 100), *և Փիլիպպոս Մօնթի* (Filippo Monti) *Փրոփականտայի քարտուղարը իւր ամփոփումը պատրաստեց, որ սեպտեմբեր* 9'*ի գումարման մէջ Փրոփականտայի ժողովէն ընդունուեցաւ,* 11'*ին պապէն հաստատուեցաւ* (Դիւթ. 171), *և անոր վրայ Փրոփականտայի նախագահը իւր տեղեկագիրը կազմեց* (Դիւթ. 172)։ *Կարդինալական մասնաւոր ժողովին գումարման օր որոշուեցաւ նոյեմբեր* 26, *հին տոմարով* 15, *երկուշաբթի օր, որուն մէջ նախ Յովհաննէս Քափփա* (Giovanni Cappa), *պապական բարձր ատեանի փաստաբաններէն, պաշտօնական խնդրագիրը կարդաց, և Աբրահամ ծնկաչոք պապին ոտքը համբուրելով՝ իւր բերնով ու արաբերէն լեզուով անոր եղբակցութիւնը արտասանեց, զոր Յովսէփ Ասսեմանի՝ Մարոնի վարդապետը թարգմանեց* (Դիւթ. 177)։ *Ասոր վրայ Աբրահամ նորէն արաբերէն լեզուով հաւատոյ դաւանութիւնը կարդաց, միշտ Ասսեմանիի թարգմանչութեամբ* (Դիւթ. 150)։ *Պապը Աբրահամի պատրիարքական պաշտօնին վրայ առենաբանութիւն մը ըրաւ, կարդինալներ հաւանութիւն յայտնեցին, և պապն ալ որոշեց պալլիումի տուուչութիւնը կատարել մօտ օրէն։ Այդ ձևերը պապական դիւանի սովորականներն են, և միայն դիտողութեան տեղի կրնայ տալ, Աբրահամի կողմէն, փոխանակ հայերէնի, արաբերէն լեզու գործածուիլը, որ հաւանաբար հետեւանք է Հայերուն մէջ Ասսեմանիէ վստահելի թարգման չգտնուելուն։ Այդ արարողութեան համար որոշուած էր Աստուածածնայ Յղութեան տօնը, դեկտեմբեր* 8'*ին, շաբաթ օր, և հանդէսը տեղի պիտի ունենար Ս. Աստուածածնայ Լիբերեան աւագ եկեղեցին* (Santa Maria Maggiore), *բայց տեղատարափ անձրեւներուն պատճառով, Կուիրինալեան պալատին մատրան մէջ կատարուեցաւ, և Բենեդիկտոս անձամբ կատարեց պալլիումի զգեստաւորութիւնը* (Դիւթ. 184), *ուրիշ ընծաներ ալ տալով այս առթիւ* (Դիւթ. 185)։ *Պապական կոնդակն ալ տրուեցաւ* 1742 *նոյեմբեր* 26 *թուականով* (Դիւթ. 190)։ *Իսկ Աբրահամ ամէն գործ վերջացնելէ ետքն ալ Հռոմի մէջ մնաց, նպաստներ և շնորհներ ճարելու նպատակով, և Հռոմ գտնուող Հայազգիներու նկատմամբ քննութիւններ կատարելու յատուկ յանձնարարութեամբ* (Դիւթ. 122)։

**2014.** *Հռոմի մէջ կատարուած գործերը, քանի որ Հայոց եկեղեցւոյն հետ կապ մը չունին, կրնանք ձգել իրենց հաճութեան։ Միայն պիտի դիտել տանք թէ Բենեդիկտոսի յայտարարութիւնները չեն կրնար պատմական ճըշմարտութիւններ այլայլել, ոչ ալ կը բաւեն Բերիոյ մէջ առանց օրինաւորութեան կաթողիկոս հռչակուողը, ինքզինքը Կիլիկիոյ դէմ հակաթոռ Պետրոս Գիծակին ժառանգ ճանչցողը։ Կիլիկիոյ կաթողիկոս Միքայէլին աթոռի վրայ գտնուած ատեն աթոռը դատարկ ցուցնողը, և աթոռին Սիսէ Էջմիածին փոխադրութեան պատմական ստուգութիւնը ուրացողը, Լուսաւորչի ուղիղ և օրինաւոր աթոռաժառանգ դարձնել։*

ԻՆՁ ԻՆՁ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ

*Ուրիշ խնդիր մըն ալ՝ որ հռոմէականաց մէջ իսկ կը յուզուի, Աբրահամի իրաւասութեան սահմանն է։ Պապական պաշտօնագիրներուն մէջ Արծիւեան լոկ կաթողիկոս Կիլիկիոյ բառով կը կոչուի, և կաթողիկոս բառն իսկ չգործածուիր, մինչ Աբրահամ ինքզինքը Ամենայն Հայոց կաթողիկոս ցուցնել կը ճգնէր, իսկ Մխիթար ալ այդ կարծիքին անհիմն ըլլալը և Կիլիկիոյ սահմանէն դուրս իրաւասութիւն չունենալը իրեն կը զգացնէր* (Մխի. 469)։ *Պզտիկ ծանօթութիւն մըն ալ Պետրոս կոչումին մասին, զոր Աբրահամ առաւ իւր վրան, և անկէ ետքն իրեն յաջորդներն*

*ալ սովորութիւն ըրին իրենց անունին աւելցնել։ Սովորութիւն է կարծել թէ այդ անունը իբր համակրութեան և պատուոյ նշան Բենեդիկտոս շնորհած ըլլայ Աբրահամին, կամ թէ Աբրահամ պապին հաւանութեամբ առանձնած ըլլայ Հռոմ եղած ատենէն։ Սակայն Աբրահամի ներբողաբանը կը գրէ յայտնապէս, թէ նա Պետրոս անունը առաւ է յիշուած Պետրոս Պէծակ դոկտորէն* (Դիթ. 92)։ *Ասիկայ կու գայ հաստատել անգամ մը եւս, թէ Աբրահամ ամենեւին յարաբերութիւն չկրնար ունենալ Սսոյ կաթողիկոսներուն հետ, և ոչ ալ անոնց յաջորդութեանը յաւակնիլ, այլ պարզապէս հակաթոռի մը յաջորդ հռչակած կ'ըլլայ ինքզինքը։ Թերեւս այդ անունի փոփոխութիւնը պէտք եղած է՝ պատրաստ կնիք ունեցած ըլլալու համար, և ձեռքի տակ գտնուող Պետրոս Պիծակի կնիքը գործածելէն, զի Մխիթարի ուղղած նամակին մէջ ալ, պարզապէս Պետրոս Խոճոյեան վերտառութեամբ կնիք մը գործածուած է* (Մխի. 464), *և Ներսէսեան ալ Աբրահամի անունը տալու համար, հօրենոր տէրն մեր Պետրոս Խոճոյեան կը գրէ պարզապէս* (Մխի. 466), *Աբրահամ անունն ալ զեղչելով։ Այս տեսութիւններով անգամ մըն ալ կը հաստատուի թէ Աբրահամու կաթողիկոսութիւնը, ոչ միայն Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնն չէ, այլ և ոչ Կիլիկիոյ կաթողիկոսութեան հետ օրինաւոր կապ մը կրնայ ունենալ։*

**ԱՐՏԻՒԵԱՆ Ի ԼԻԲԱՆԱՆ**

**2015**. *Աբրահամ վերջապէս Հռոմէ մեկնեցաւ* 1743 *յուլիս* 11*'ին, և* 18*'ին Լիվոռնօ հասաւ* (Մխի. 467), *և միջոց մըն ալ այն տեղ մնաց, զի ինչպէս օգոստոս* 7*'ին Մխիթարին կը գրէ, նաւ չէր գտներ Քնով յարմար, և ինչ ընելիքին վրայ ալ վարանոտ էր, Լիբանա՞ն թէ Կոստանդնուպոլի՞ս կամ թէ Գաղղիա՞ երթալ* (Մխի. 467)։ *Մխիթար օգոստոս* 17*'ին կը պատասխանէ, հեռացնելով Կ-Պոլիս երթալու գաղափարէն, և աւելի յորդորելով Գաղղիա երթալ, և թագաւորէն նպաստ և պաշտպանութիւն ճարել Կիլիկիոյ համար* (Մխի. 469)։ *Բայց Աբրահամ միշտ մտադիր էր Կ-Պոլիս անցնիլ, և հոն յատուկ պատրիարքութիւն մը կազմակերպել, Թասպասեանի հին խորհուրդին համաձայն* (§ 2010)։ *Սակայն Կ-Պոլիսէ ալ վստահելի լուրեր չէր առներ, զի իւր ձեռնարկը յուզում յառաջ բերած էր, և իւր հակաթոռ և հակադաւան ձգտումները պատրիարքարանը պաշտպանողական միջոցներու պատրաստուած էին։ Նալեան պատրիարքի միջնորդութեամբ նոր հրովարտակներ ստացուած էին, օտարներու ապաւինելով ազգային իշխանութեանց անսաստողներուն դէմ, և Միքայէլ Աջապահեան կաթողիկոսը երիցս Բերիա ինջած էր պարտուպատշաճը գործադրելու, և խռովութեանց պարագլուխները զսպելու։ Ասանկներու համար պետական հրաման կար Ատանայի բերդը բանտարկելու, և Յակոբ եպիսկոպոսն ալ նախ պահուըտելու և յետոյ Քրէյմ քաշուելու ստիպուած էր* (ԱՆՏ.), *և կաթոլիկներու ձեռք ձգած եկեղեցին ալ իրենցմէ ետ առնուած էր* (Դիթ. 119)։ *Աբրահամ նոր դիմում ըրած էր Բենեդիկտոսի որ իրեն տուած յանձնարարականներէն զատ, նոր հրահանգներ տայ Կ-Պոլսոյ եւրոպական դեսպաններուն՝ զինքն պաշտպանել և իրեն պաշտօնական դիրք ստեղծել տալ. սակայն պապը* 1743 *օգոստոս* 10 *թուակիր նամակով, խոստումներ միայն կ'ընէր և նախախնամութեան վրայ յոյսը դնելու կը յորդորէր* (Դիթ. 135)։ *Կարդինալներէ առած նամակներն ալ զգուշաւորութիւն կը յանձնարարէին, միանգամայն հայր Գրիգոր Ներսէսեանի նամակէն կը տեղեկանար թէ կառավարութիւնը ամէն կողմ հրամաններ տրուած է, որ ուր և հանդիպի ձերբակալուի, և Ատանայի բերդը տարուի* (Դիթ. 134)։ *Այդ տպաւորութեանց ներքեւ օգոստոս* 10*'ին Լիվոռնոյէ մեկնեցաւ, սեպտեմբեր* 15*'ին Աղեքսանդրիա հասաւ, և հազիւ ցամաք ելած, ձեռք իյնալէ վախցաւ, և գիշերախառն նաւ դառնալով, Պէյրութ եկաւ, և հոն ալ զգուշաւորութեամբ ցամաք ելլալով շուտով Լիբանանի սահմանը մտաւ, և եկաւ իւր հնօրեայ ապաստանարանը, Անտոնեանց Քրէյմի վանքը, ուր մտաւ* 1743 *հոկտեմբեր* 6*'ին* (Դիթ. 139), *ուսկից վերջին անգամ մեկնած էր երկու տարի առաջ* 1741 *սեպտեմբեր* 30*'ին* (§ 2011)։ *Այդ ուղեւորութեան մէջ ալ Աբրահամ Անտոնեաններէ օժանդակուած էր, իրեն ուղեկից առ-*

նելով Իսահակ եպիսկոպոսը և հայր Նիկողայոս Միրոյեանը, որոնցմէ երկրորդը Լիվոռնօ մնաց, իսկ եպիսկոպոսը մէկտեղ դարձաւ, և Եգիպտոսէ ալ իրեն ընկերացաւ հայր Յովսէփ Ստեփանեան կամ Այվազեան, ամէնքն ալ Անտոնեան միաբաններ։

**ԱՐԾԻՒԵԱՆԻ ՋԳՏՈՒՄՆԵՐ**

**2016**. Որչափ ալ անուղղով Լիբանան փախած, Աբրահամ հրաժարած չէր Կ-Պոլսոյ մէջ Հայ-կաթոլիկ պատրիարքարան մը հիմնելու գաղափարէն, և Թուրքիոյ ամէն կողմ գտնուող կաթոլիկներու վրայ իշխանութիւն բանեցնելու ձգտումէն, թէպէտեւ պապական կոնդակով ալ լոկ Կիլիկիոյ սահմանները նշանակուած էին իրեն իրաւասութեան։ Իր Լիբանան քաշուելովը իրեն մասին հրամայուած զգուշաւորութիւնները լռեցին, և հազիւ թէ այդ բանը իմացաւ հայր Գրիգոր Ներսէսեանի և հայր Պօղոս Սամանճեանի նամակներէն, Կ-Պոլիս երթալու փափաքը նորոգուեցաւ։ Ըստ այսմ 1744 նոյեմբերին Պէյրութ կ'իջնէ նաւ փընտռել, և առաջին առիթով Աղեքսանդրիա կ'անցնի։ Հարկաւ շատ կանուխէն Կ-Պոլիս ալ լուր տուած պիտի ըլլայ, որ Գաղղիական դեսպանը և Լատին եպիսկոպոսը կը փութան արգելել անոր ուղեւորութիւնը, և լուր կը հասցնեն Աղեքսանդրիա որ Կ-Պոլիս չգայ։ Հարկաւ անոնք ալ կը նախատեսեն յանդուգն ձեռնարկին դժբախտ ելքը, և իրենց ալ պետական օրէնքներու հակառակ յաջողելուն անհնարութիւնը (Դիթ. 141)։ Սակայն ուրիշներ Լատին քարոզիչներու [illegible], և Լատին եպիսկոպոսին շահախնդրութեան կը վերագրեն այդ քայլը, որոնց նիւթական օգուտները պիտի վըտանգուէին, եթէ Հայ-կաթոլիկներ Լատին եկեղեցիներէ հեռանալով իրենց յատուկ եկեղեցիներն ու նուիրապետութիւնը ունենային (Դիթ. 126)։ Լատին եպիսկոպոսին նամակը 1744 ապրիլ 30'ին գրուած էր (Դիթ. 143), բայց Աբրահամ զայն Աղեքսանդրիոյ մէջ առաւ, և ստիպուեցաւ համակերպիլ ու ետ դառնալ։ Նաւով Աքիա եկաւ, և Դամասկոսէ անցնելով նորէն Քըրէյմի վանքը ապաւինեցաւ 1745'ին սկիզբները, ուսկից այլ եւս չհեռացաւ, ինքն ալ հարկաւ համոզուելով իր ձգտումներուն անգործադրելիութեան վրայ։ Երբոր Աբրահամ այլ եւս հանդարտօրէն տեղաւորուեցաւ Քրէյմի վանքը, Անտոնեանք չհրաժարեցան Արեւմուտք անցնելու գաղափարէն, որուն հետեւանքն եղած էր Մխիթարեանց հետ ձուլուելու խորհուրդը (§ 2011)։ Մխիթարի մերժումի վրայ իրենք իւրովի փոխադրուելու ծրագիրը կազմեցին, և 1746'ի ժողովին, որուն մէջ հայր Յովսէփ Այվազեան աբբահայր ընտրուեցաւ, որոշեցին նաեւ Հռոմի մէջ վանք մը ունենալ, և առ այս պէտք եղած նախապատրաստութեանց համար հայր Գրիգոր Ներսէսեանի և հայր Պօղոս Սամանճեանի պաշտօն տրուեցաւ Հռոմ ուղեւորիլ։ Ասոնք նորէն Կ-Պոլիս մեկնեցան, բայց այս անգամ Հռոմ անցնելու միջոցներ և դիւրութիւններ չգտան (ԱՆՏ.)։ Քիչ մը աւելի երկարեցինք կաթոլիկական գործունէութեան վրայ, ուզելով անոր մասին որոշ գաղափար մը տալ։

**ՆԱԼԵԱՆԻ ԸՆԹԱՑՔԸ**

**2017**. Կ-Պոլիս և Երուսաղէմ նորութիւններ չեն ներկայեր մեզ այդ միջոցին, Նալեանի առաջին և Շըղթայակիրի վերջին տարիները սովորական գործունէութեամբ անցան։ Նալեանի ձեռնարկներէն յիշեցինք Արծիւեանի ոտնձգութիւններուն առջեւն առնելու համար ըրածները (§ 2015), առանց մեծամեծ խնդիրներ յուզելու։ Կաթոլիկութեան դէմ ձեռք առնուած միջոցները աւելի Բերիոյ կողմերուն վրայ գործածուեցան, և թէպէտ Արծիւեանի ձեռնարկը բոլորովին չխափանուեցաւ, բայց գոնէ պարտաւորուեցաւ Լիբանանի մէջ փակուիլ, և անկէ դուրս ալ՝ գողունի և ընդհատ կերպով կրնային գործել, իր հրամանով աստեւանդ ղրկուած Անտոնեան միաբանները։

**ԱՂԹԱՄԱՐԻ ԳՈՐԾԵՐ**

**2018**. Աղթամարի աթոռին վրայ ալ Պաղտասար Բաղիշեցիէ ետքը (§ 1963) կը յիշուին Սահակ Աղբակեցի, և Յակոբ Ամդեցի, և Նիկողայոս Սպարկերտցի, որ 1740'ին գրուած յիշատակարանի մէջ յիշուած է (ՕՕ ԲԻՋ.1119), թէպէտ ուրիշ տեղ 1743'ին կաթողիկոս ե-

*ալ սովորութիւն ըրին իրենց անունին աւելցնել։ Սովորութիւն է կարծել թէ այդ անունը իբր համակրութեան և պատուոյ նշան Բենեդիկտոս շնորհած ըլլայ Աբրահամին, կամ թէ Աբրահամ պապին հաւանութեամբ առանձնած ըլլայ Հռոմ եղած ատենէն։ Սակայն Աբրահամի ներբողաբանը կը գրէ յայտնապէս, թէ նա Պետրոս անունը առաւ է յէշտով Պետրոս Պիծակ պատրիարքէն* (ԴԻԹ. 92)։ *Աւելկայ կու գայ հաստատել անգամ մը եւս, թէ Աբրահամ ամենեւին յարաբերութիւն չկրնար ունենալ Սսոյ կաթողիկոսներուն հետ, և ոչ ալ անոնց յաջորդութեանը յաւակնիլ, այլ պարզապէս հակաթոռի մը յաջորդ հռչակած կ՚ըլլայ ինքզինքը։ Թերեւս այդ անունի փոփոխութիւնը պէտք եղած է՝ պատրաստ կնիք ունեցած ըլլալու համար, և ձեռքի տակ գտնուող Պետրոս Պիծակի կնիքը գործածելէն, զի Մխիթարի ուղղած նամակին մէջ ալ, պարզապէս Պետրոս Նոպոյէկոս վերտառութեամբ կնիք մը գործածուած է* (ՄԽԻ. 464), *և Ներսէսեան ալ Աբրահամի անունը տալու համար, Հոգեւոր տէրն մեր Պետրոս Նոպոյէկոսն կը գրէ պարզապէս* (ՄԽԻ. 466), *Աբրահամ անունն ալ զեղչելով։ Այս տեսութիւններով անգամ մըն ալ կը հաստատուի թէ Աբրահամու կաթողիկոսութիւնը, ոչ միայն Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնն չէ, այլ և ոչ Կիլիկիոյ կաթողիկոսութեան հետ օրինաւոր կապ մը կրնայ ունենալ։*

**2015.** *Աբրահամ վերջապէս Հռոմէ մեկնեցաւ* 1743 *յուլիս* 11*՚ին, և* 18*՚ին Լիվոռնօ հասաւ* (ՄԽԻ. 467), *և միջոց մըն ալ այն տեղ մնաց, զի ինչպէս օգոստոս* 7*՚ին Մխիթարին կը*

**ԱՐՏԻՒԵԱՆ Ի ԼԻԲԱՆԱՆ**

*գրէ, նաւ չէր գտներ Նոյն յուրէի, և ինչ ընելիքին վրայ ալ վարանոտ էր, Լիբանա՞ն թէ Կոստանդնուպոլի՞ս կամ թէ Գաղղիա՞ երթալ* (ՄԽԻ. 467)։ *Մխիթար օգոստոս* 17*՚ին կը պատասխանէ, հեռացնելով Կ-Պոլիս երթալու գաղափարէն, և աւելի յորդորելով Գաղղիա երթալ, և թագաւորէն նպաստ և պաշտպանութիւն ճարել Կիլիկիոյ համար* (ՄԽԻ. 469)։ *Բայց Աբրահամ միշտ մտադիր էր Կ-Պոլիս անցնիլ, և հոն յատուկ պատրիարքութիւն մը կազմակերպել, Թասպասեանի հին խորհուրդին համաձայն* (§ 2010)։ *Սակայն Կ-Պոլիսէ ալ վստահելի լուրեր չէր առներ, զի իւր ձեռնարկը յուզում յառաջ բերած էր, և իւր հակաթոռ և հակադաւան ձգտումները պատրիարքարանը պաշտպանողական միջոցներու պարտաւորած էին։ Նալեան պատրիարքի միջնորդութեամբ նոր հրովարտակներ ստացուած էին, օտարներու ապաւինելով ազգային իշխանութեանց անսաստողներուն դէմ, և Միքայէլ Աջապահեան կաթողիկոսը երիցս Բերիա ինջած էր պարտուպատշաճը գործադրելու, և խռովութեանց պարագլուխները զսպելու։ Ասանկներու համար պետական հրաման կար Ատանայի բերդը բանտարկելու, և Յակոբ եպիսկոպոսն ալ նախ պահուըտելու և յետոյ Քրէյմ քաշուելու ստիպուած էր* (ԱՆՏ.), *և կաթոլիկներու ձեռք ձգած եկեղեցին ալ իրենցմէ ետ առնուած էր* (ԴԻԹ. 119)։ *Աբրահամ նոր դիմում ըրած էր Բենեդիկտոսի որ իրեն տուած յանձնարարականներէն զատ, նոր հրահանգներ տայ Կ-Պոլսոյ եւրոպական դեսպաններուն՝ զինքն պաշտպանել և իրեն պաշտօնական դիրք ստեղծել տալ. սակայն պապը* 1743 *օգոստոս* 10 *թուակիր նամակով, խոստումներ միայն կ՚ընէր և նախախնամութեան վրայ յոյսը դնելու կը յորդորէր* (ԴԻԹ. 135)։ *Կարդինալներէ առած նամակներն ալ զգուշաւորութիւն կը յանձնարարէին, միանգամայն հայր Գրիգոր Ներսէսեանի նամակէն կը տեղեկանար թէ կառավարութիւնը ամէն կողմ հրամաններ տըւած է, որ ուր և հանդիպի ձերբակալուի, և Ատանայի բերդը տարուի* (ԴԻԹ. 134)։ *Այդ տպաւորութեանց ներքեւ օգոստոս* 10*՚ին Լիվոռնոյէ մեկնեցաւ, սեպտեմբեր* 15*՚ին Աղեքսանդրիա հասաւ, և հազիւ ցամաք ելած, ձեռք իյնալէ վախցաւ, և գիշերախառն նաւ դառնալով, Պէյրութ եկաւ, և հոն ալ զգուշաւորութեամբ ցամաք ելլալով շուտով Լիբանանի սահմանը մտաւ, և եկաւ իւր հնօրեայ ապաստանարանը, Անտոնեանց Քրէյմի վանքը, ուր մտաւ* 1743 *հոկտեմբեր* 6*՚ին* (ԴԻԹ. 139), *ուսկից վերջին անգամ մեկնած էր երկու տարի առաջ* 1741 *սեպտեմբեր* 30*՚ին* (§ 2011)։ *Այդ ուղեւորութեան մէջ ալ Աբրահամ Անտոնեաններէ օժանդակուած էր, իրեն ուղեկից առ-*

նելով Իսահակ եպիսկոպոսը և հայր Նիկողայոս Միրոյեանը, որոնցմէ երկրորդը Լիվոռնօ մնաց, իսկ եպիսկոպոսը մէկտեղ դարձաւ, և Եգիպտոսէ ալ իրեն ընկերացաւ հայր Յովսէփ Ստեփանեան կամ Այվազեան, ամէնքն ալ Անտոնեան միաբաններ։

**ԱՐՄԻՒԵԱՆԻ ՋԳՏՈՒՄՆԵՐ**

**2016**. Որչափ ալ ահուդողով Լիբանան փախած, Աբրահամ հրաժարած չէր Կ-Պոլսոյ մէջ Հայ-կաթոլիկ պատրիարքարան մը հիմնելու գաղափարէն, և Թուրքիոյ ամէն կողմ գտնուող կաթոլիկներու վրայ իշխանութիւն բանեցնելու ձգտումէն, թէպէտեւ պապական կոնդակով ալ լոկ Կիլիկիոյ սահմանները նշանակուած էին իրեն իրաւասութեան։ Իր Լիբանան քաշուելովը իրեն մասին հրամայուած զգուշաւորութիւնները լռեցին, և հազիւ թէ այդ բանը իմացաւ հայր Գրիգոր Ներսէսեանի և հայր Պօղոս Սամանճեանի նամակներէն, Կ-Պոլիս երթալու փափաքը նորոգուեցաւ։ Ըստ այսմ 1744 նոյեմբերին Պէյրութ կ'իջնէ նաւ փնտռել, և առաջին առիթով Աղեքսանդրիա կ'անցնի։ Հարկաւ շատ կանուխէն Կ-Պոլիս ալ լուր տուած պիտի ըլլայ, որ Գաղղիական դեսպանը և Լատին եպիսկոպոսը կը փութան արգելել անոր ուղեւորութիւնը, և լուր կը հասցնեն Աղեքսանդրիա որ Կ-Պոլիս չգայ։ Հարկաւ անոնք ալ կը նախատեսեն յանդուգն ձեռնարկին դժբախտ ելքը, և իրենց ալ պետական օրէնքներու հակառակ յաջողելուն անհնարութիւնը (ԴԻԹ. 141)։ Սակայն ուրիշներ Լատին քարոզիչներու ոփոհոոբէոն, և Լատին եպիսկոպոսին չահախնդրութեան կը վերագրեն այդ քայլը, որոնց նիւթական օգուտները պիտի վըտանգուէին, եթէ Հայ-կաթոլիկներ Լատին եկեղեցիներէ հեռանալով իրենց յատուկ եկեղեցիներն ու նուիրապետութիւնը ունենային (ԴԻԹ. 126)։ Լատին եպիսկոպոսին նամակը 1744 ապրիլ 30'ին գրուած էր (ԴԻԹ. 143), բայց Աբրահամ զայն Աղեքսանդրիոյ մէջ առաւ, և ստիպուեցաւ համակերպիլ ու ետ դառնալ։ Նաւով Աքիա ելաւ, և Դամասկոսէ անցնելով նորէն Քրէյմի վանքը ապաւինեցաւ 1745'ին սկիզբները, ուսկից այլ եւս չհեռացաւ, ինքն ալ հարկաւ համոզուելով իր ձգտումներուն անգործադրելիութեան վրայ։ Երբոր Աբրահամ այլ եւս հանդարտօրէն տեղաւորուեցաւ Քրէյմի վանքը, Անտոնեանք չհրաժարեցան Արեւմուտք անցնելու գաղափարէն, որուն հետեւանքն եղած էր Մխիթարեանց հետ ձուլուելու խորհուրդը (§ 2011)։ Մխիթարի մերժումի վրայ իրենք իւրովի փոխադրուելու ծրագիրը կազմեցին, և 1746'ի ժողովին, որուն մէջ հայր Յովսէփ Այվազեան աբբահայր ընտրուեցաւ, որոշեցին նաեւ Հռոմի մէջ վանք մը ունենալ, և սա այս պէտք եղած նախապատրաստութեանց համար հայր Գրիգոր Ներսէսեանի և հայր Պօղոս Սամանճեանի պաշտօն տրուեցաւ Հռոմ ուղեւորիլ։ Ասոնք նորէն Կ-Պոլիս մեկնեցան, բայց այս անգամ Հռոմ անցնելու միջոցներ և դիւրութիւններ չգտան (ԱՆՏ.)։ Քիչ մը աւելի երկարեցինք կաթոլիկական գործունէութեան վրայ, ուզելով անոր մասին որոշ գաղափար մը տալ։

**ՆԱԼԵԱՆԻ ԸՆԹԱՑՔԸ**

**2017**. Կ-Պոլիս և Երուսաղէմ նորութիւններ չեն ներկայեր մեզ այդ միջոցին, Նալեանի առաջին և Շղթայակիրի վերջին տարիները սովորական գործունէութեամբ անցան։ Նալեանի ձեռնարկներէն յիշեցինք Արծիւեանի ոտնձգութիւններուն առջեւն առնելու համար ըրածները (§ 2015), առանց մեծամեծ խնդիրներ յուզելու։ Կաթոլիկութեան դէմ ձեռք առնուած միջոցները աւելի Բերիոյ կողմերուն վրայ գործածուեցան, և թէպէտ Արծիւեանի ձեռնարկը բոլորովին չխափանուեցաւ, բայց գոնէ պարտաւորուեցաւ Լիբանանի մէջ փակուիլ, և անկէ դուրս ալ՝ գողունի և ընդհատ կերպով կրնային գործել, իր հրամանով աստեւանդ ղրկուած Անտոնեան միաբանները։

**ԱՂԹԱՄԱՐԻ ԳՈՐԾԵՐ**

**2018**. Աղթամարի աթոռին վրայ ալ Պաղտասար Բաղիշեցիէ ետքը (§ 1963) կը յիշուին Սահակ Աղբակեցի, և Յակոբ Ամդեցի, և Նիկողայոս Սպարկերտցի, որ 1740'ին գրուած յիշատակարանի մէջ յիշուած է (00 ԲԻՋ.1119), թէպէտ ուրիշ տեղ 1743'ին կաթողիկոս ե-

ղած կ'ըսուի, իւր նախորդին գանգրնկէցութեամբ վասն անյարմար կացութեանն, և չէ ընթեան է օգուտ անշէութեայ, չէկեղեցական միաբանութեան ցրուելոյ, և չնմանել աշխարհականս բնակեցոյց է վանսն (ՋԱՄ·95)։ Նիկողայոս ալ նորոգեց վիճակներ գրաւելու փորձը, և Աղեքսանդր աբեղայի մը ձեռքով Օսմանեան կառավարութենէ հրովարտակ կը հանէ, Վան, Բաղէշ, Մուշ և շրջակայ վիճակներ իւրացնելու, և անոր զօրութեամբ էջմիածինի նուիրակ Յովհաննէս վարդապետն ալ կը վտարէ, հաւաքած արդիւնքն ալ ձեռքէն առնելով։ Ջահկեցիին բողոքելուն վրայ՝ հակառակ հրովարտակ մը կը ստանայ Նալեան 1746'ին, և ոչ միայն վիճակները այլեւ արդիւնքները ետ կ'առնեն Նիկողայոսէ, և Ջահկեցին ընէկողայոսն եւս քանդէր։ Ասոր վրայ Աղթամարի վիճակայինք կը յուզուին, և բոլոր վիճակօք, վանականօք և աշխարհականօք, Նիկողայոսը էջմիածին կըղրկեն արձակում ստանալու, խոստանալով այնուհետև կաթողիկոսօք և վիճակօք ի հնազանդութեան սրբոյ Էջմիածնի մնալ։ Ջահկեցին կը զիջանի, Նիկողայոսը կ'արձակէ և աթոռին կը դարձնէ, հրամայելով որ անկէ ետքը իրենք զոյլ ոք մի գնիցեն, այլ ընտրեալը ի սուրբ աթոռն առաքեսցեն ի օծել։ Նիկողայոս յետ ամաց ինչ կը մեռնի, և Աղթամարցիք նորէն ինքնագլուխ կ'ընտրեն յաջորդը, Գրիգոր մը, բայց Ջահկեցիին յաջորդներ, պաշարեցեալ ի խառնակմանց ժամանակին մտադրութիւն չեն դարձներ, մինչեւ Գրիգորի մահը 1761'ին (ՋԱՄ·96)։

2019. Աղուանից աթոռին վրայ Եսայիի մահուանէ ետքը (§ 1956), ազատ մնաց հակաթոռ Ներսէսը (§ 1929),

**ԱՂՈՒԱՆԻՑ ԱԹՈՌԸ**

թէպէտ երբեմն էջմիածինէ բանադրուած, բայց կացութեան տէր կը դառնար։ Կարապետ Ուլնեցի մտադրութիւն չէր դարձուցած, իսկ Խոչաբեցին ներեց անոր և թողուց որ պաշտօնը վարէ (ՋԱՄ·85)։ Կրետացին սէր ալ ցուցուց (§ 1900), և Ղազար գործը քննելով, թէպէտ Ներսէսին եւ խոստովանել դաւանութիւն իւր, բայց յետոյ արձակէ զնա ի կողմն, և խոստմնագիր առնելէ ետքը թէ մի եւս ապստամբեսցէ, կոնդակով հաստատեց Ներսէսը իւր աթոռին վրայ, որ մինչեւ 1763 ապրեցաւ (ՋԱՄ·86)։

2020. Պարսկաստանի աթոռին, կամ Ասպահանի մետրապոլտութեան և Ամենափրկչի առաջնորդութեան

**ԱՍՊԱՀԱՆԻ ԱԹՈՌԸ**

վրայ՝ վերջին անգամ յիշեցինք Դաւիթ Ջուղայեցին (§ 1943), ճգնազգեաց անձ մը, որ բոլոր իւր մտադրութիւնը դարձուցած էր եկեղեցական պաշտամանց մասին։ Իրմէ դրուած կանոններուն մէջ կը յիշուին, 1. Պատարագի օրեր երեք Ուր-ժա լսել, և մէկ հատով չշատանալ։ 2. Գիշերային ժամին անխափան ներկայ գտնուիլ։ 3. Քահանաներ միշտ ընկեր քահանայով ժողովուրդի տուները երթալ։ 4. Քահանաներ շուկայ չելլալ և խանութները չնստիլ։ 5. Եկեղեցականներ Ղուխար չհագնիլ։ 6. Հրաժարիմք, Խոստովանիմ և Մեղայ աղօթքները զանց չընել։ 7. Պահք թէ ուտիք ամէն լուր օրեր անպակաս Արեւագալը ըսել։ 8. Եկեղեցականներ քթախոտ չգործածել (ՏՑՈ·Բ·53-55)։ Այդ կանոնները բաւական են Դաւիթին անձնաւորութիւնը նկարագրել։ Իրեն պաշտօնը տեւած է 3 տարի, և 1728 դեկտեմբեր 18'ին վախճանելով իրեն յաջորդած է Աստուածատուր Ֆահրապատցի եպիսկոպոսը, մականուանեալ Աղաւնի, հեզաբարոյ և խաղաղասէր անձ մը, որ մինչեւ 1745 յունուար 17 ապրած է (ՏՑՈ·Բ·58), և բարի անուն թողած է ետեւէն։ Անոր յաջորդն է Պօղոս Ջուղայեցին։ Այսչափս համառօտիւ զանազան աթոռներու վրայ խօսելէ ետքը, անցնինք Մայրաթոռին, զոր պահ մը աչքէ հեռացուցինք։

2021. Աբրահամ Կրետացի կաթողիկոսը, 1736 փետրուար 15'ին, երբոր իւր բարեմաղթութիւնները Նա-

**ՆԱՏԻՐԻ ԸՆԹԱՑՔԸ**

տիրի կ'ուղղէր (§ 1978), ըսած էր նաեւ, որ ինչպէս զայն Պարսկաստանի յաղթական կը տեսնէր, Աստուծով Ղանտահարի և Հնդկաստանի յաղթական ալ պիտի տեսնէր (ԿՐԵ·60)։ Նատիրին վրայ հիացողին գուշակութիւնները պարապի չելան, սակայն ինքը չտեսաւ, զի 1737'ին ամառուան վերջերը սկսաւ Նատիր չան իւր արշաւանքը, երբ Կրետացին մեռած էր արդէն (§ 1990)։ Առաջին յարձակումը Ղանտահարի Աֆղաններուն վրայ բրաւ, զի Հիւսէյին

*խան, չահ Մահմուտին (§ 1964) եղբայրը, չէր խոնարհեր Նատիրի ձեռաց ներքեւ, որ Աֆղանները Պարսկաստանէ հեռացուցած էր (ԽԱՁ. 261)։ Նատիր զօրացաւ, և Ղանտահարը ու Քապուլը նուաճելէն ետքը, Ինդոս գետը անցաւ և Հնդկաստան մտաւ, Մողոլեան կայսրութեան մայրաքաղաքը Տէլհին գրաւեց 1739ին (ՏՊէ. 363), Սինտն ալ նուաճեց, Հերաթի մէջ յաղթութիւնը տօնախմբեց, Պուխարա մտաւ, Խարիզմը ընկճեց, Խորասանի Մէշէթ քաղաքը միջոց մը մնաց, և վերջապէս երբ հինգ տարի ետքը, 1742ին Ասպահան դարձաւ, ընդարձակ Պարսկական կայսրութիւն մը կազմած էր, որուն սահմաններն էին Տիգրիս, Ինդոս, Ոքսոս և Կասպիականը (ՏՊէ. 364)։ Բայց Կրետացիին գոված օրինակելի վեհապետը այլափոխուած էր այլեւս, ու սոսկալի բռնաւոր մըն էր դարձած։ Հնդկաստանի աւարը անոր ախորժակը գրգռեց, և ամէն կերպերով հարստութիւն դիզելու հետամուտ եղաւ. բռնութենէ ու անիրաւութենէն չկասեցաւ, և ամէնուն ատելի դառնալ սկսաւ։ Մեր նպատակէն դուրս կը նկատենք ասոնց մանրամասնութեանը մտնել։ Նատիրին վրայ ազդեցութիւն գործած պարագաներուն կարգին կը պատմուի, իւր դէմ եղած դաւաճանութիւնը, իւր իսկ որդւոյն Ռիզաղուլիի գրգռութեամբ, ուսկից ազատեցաւ, բայց որդւոյն զերկոսին աչս Բրէ յետոյ խարել (ԽԱՁ. 262)։ Կրօնական զգացումներու կողմէ ալ անտարբեր և թոյլ կը նկարագրուի Նատիր, որ իբր հետաքրքրութիւն կը հրամայէ պարսկերէնի թարգմանել հրէութեան, քրիստոնէութեան և իսլամութեան սուրբ գիրքերը։ Քրիստոնէութեան գիրքերուն համար Հայ վարդապետներու կը դիմէ, որոնք կը կատարեն հրամանը՝ Գէորգ Ջուղայեցի արագածաբան և հանճարագէտ բանիբունաւորին գլխաւորութեամբ, որ թէեւ աստնորդէ ուրոյ լեզուաւ Ջուղայէ յորջորջմամբ նշանակուած է (ԽԱՁ. 263), սակայն նա անագան 1754ին այդ պաշտօնին բարձրացաւ (ՏԵՈ. Բ. 61). իսկ Նատիր շահ 1747ին սպանուեցաւ, որով տրուած յորջորջումը ապագային պիտի յատկացուի։ Գէորգ և քահանայք և եկեղեցականք, որ անոր հետ էին, ամենեքեան խելայէ և իբր հարևոր բուսման ընծայէ վարձատրուեցան (ԽԱՁ. 264)։*

**ՋԱՀԿԵՑԻՆ ԵՒ ԱԳՈՒԼԵՑԻՆ**

**2022.** *Նատիրէ ոչ տարբեր բռնաւոր մըն ալ դարձած էր Ղազար Մայրաթոռի մէջ, ուսկից թէպէտ չինարար ձեռնարկներ ունինք, սակայն անոնցմով չեն արդարանար իւր բռնական գործերը։ Ղազարի յիշատակը շատ փառաւոր եղած կ'ըլլար իւր շինած վեհարանով, և իւր անունէն կոչուած Ղազարապատ հիւրանոցով (ՋԱՄ. 31), եթէ միւս կողմէն միաբանութեան վրայ գործած հարստահարութիւններով զայն աղտեղած չըլլար, մինչ ինքն ալ ազատ չէր Նատիրի հարստահարութիւններէն։ Իւր արկածները զանազաններէ տարբեր պարագաներով պատմուելուն, պէտք է ըսենք թէ տարբեր գործեր են, և ոչ թէ տարբեր պարագաներով պատմուած են։ Նախ կը յիշուի թէ 1742ին Նատիր 24,000 դահեկան պահանջեց Ղազարէն, պարզապէս այն պատճառով թէ «է դուք քահանայապետիդ ոսկեաւ գնոյն» (ԽԱՁ. 265)։ Նատիր հարկաւ պահանջն ալ գանձած է, իսկ պահանջելուն առիթ փնտռել պէտք չէ, զի ունեցողէն ունեցածը առնել իրեն իրաւունք սեպած էր։ Հարկաւ չահելու և չահուելու նպատակով էր, որ Ղազար 1745ին Նատիրի տեսութեան գացած էր Խորասանի Մէշէթ մայրաքաղաքը (ՋԱՄ. Գ. 827), որ կը յարմարի Հնդկաստանի յաղթութենէ դառնալու միջոցին՝ նոն ժամանակ մը հանգստանալուն (§ 2021)։ Իրեն հետ կը գտնուէին Պետրոս Այնթապցի և Աղեքսանդր Բիւզանդացի վարդապետները, աւելի ծանօթ իրենց Քիւթիւր և Քարաքաշ մականուններով։ Այդ պարագային պէտք է կապել ուրիշ արկած մը, թէ Ղազար վասն յանցման իւրոյ՝ բանիւ և բարբառով ընկեցաւ յաթոռոյ (ՇԱՀ. Ա. 227), և թէ Միքայէլ՝ տեղապահ ու Յովհաննէս Շիրաճի՝ գործակալ վարդապետները, առիթ գտան Քիւթիւրն ու Քարաքաշը ամբաստանել, թէ երկոքին եւս երեցին զէէն չարախօսութեան առ Նատըր շահ (ՋԱՄ. Գ. 828)։ Ինչ էր Ղազարի վրայ դրուած յանցանքը և ինչպէս գործադրուեցաւ գանակոծութիւնը՝ որոշակի գրըուած չենք գտներ. բայց քանի որ տու-*

գանք ալ կը յիշուի, գոնէ ինչպէս ազատած ըլլալուն կերպը կը բացատրուի։ Իսկ աթոռակալութիւնը լոկ թագաւորական հրաման մը ըլլալուն, ներքնապէս գործադրուած չէ, այլ արտաքին ձեւը յարգելով Ղազար գործէ քաշուած է, և Յովհաննէս Ագուլեցի՝ առաջնորդ Գողթան, իբրեւ փոխանորդ կամ տեղակալ գործերը վարելու սկսած է։ Այդ կացութիւնը հազիւ վեց ամիս կը տեւէ, զի նոյն ինքն Յովհաննէս տեղակալ և միաբաններ՝ օգուտ քաղելով Նատիրի թոռ Շահռուհի Երեւան և Էջմիածին այցելելէն, անոր միջնորդութեամբ կ'ընդունին Ղազարի նորէն աթոռ դառնալուն չնորհը, ծանր տուգանքի պայմանով, և Յովհաննէս նորէն իւր առաջնորդական վիճակը կը դառնայ (ՇԱՀ. Ա. 228)։ Ըստ այսմ կրնանք Յովհաննէս Ագուլեցիէն հեռացնել՝ հակաթոռ մը եղած ըլլալու ենթադրութիւնը։ Իսկ եղելութեան թուական կրնանք նշանակել 1745 տարին։

**2023.** Ղազար հազիւ իւր գիրքը գտած, կը սկսի Քիւթիւրին և Քարաքաշին վրայ

**ՔԻՒԹԻՒՐ ԵՒ ՔԱՐԱՔԱՇ**

թռնանալ, հիմնուելով այն քսութեան վրայ, զոր տեղակակալ Միքայէլ և գործակալ Յովհաննէս հնարած էին (§ 2022)։ Ջահկեցին կը խորհէր ընկճել և ստորնացնել այդ երկու վարդապետները, որոնց դիրքն ու արժանիքը իրեն աչքին փուշ եղած էին, և կերպով մը սանձ կը դնէին իւր յախուռն բերմունքներուն։ Ոչ միայն իրեն դէմ գրած ըլլալնուն բարուրանքը, այլ և իրեն նկատմամբ տարիներ առաջ ամէն մի ըսածնին կամ ըրածնին՝ ամբաստանութեան նիւթ կազմելով, հարցափորձերու սկսաւ, հարուածներով խառն, և մինչեւ իսկ իբրեւ քաղաքական յանցաւորներ Թավրէզի իշխանապետութեան մատնել սպառնացաւ։ Երկու վարդապետներուն համարձակ պատասխանները և իրենց ստութիւնները մէջտեղ դնելը՝ Ղազարը աւելի զայրացուցին, որ երկուքն ալ ֆալախայի հարուածներուն ենթարկեց, ուշաթափ ընել տալու չափ, և չղթայակապ բանտարկել տուաւ։ Երեսուն օր մնացին այնտեղ անխնամ, հազիւ ոգեպահիկով, և տանջանքներու սպառնալիքով, և չկրցան ելլել բայց եթէ բոնի պարտամուրհակներ ստորագրելով։ Բայց այն ատեն ալ իրենց կրնքուած սնենակները կողոպտուեցան, և իրենք ալ արգելական պահուեցան յիսուն օր եւս (ՋԱՄ. Գ. 830)։ Ղազարի ատելութիւնը աւելի սաստիկ էր Քիւթիւրին վրայ, անդատին ընտրութեան միջոցին իրեն հակառակ եղած ըլլալէն (§ 1991), ուստի Քիւթիւր փութաց Կարս փախչիլ, իսկ Ղազար անոր փոքրաւորներուն և ազգականներուն վըրայ թափեց իւր զայրոյթը։ Բայց երբ օգուտ մը չքաղեց, նենգութեան դիմեց, և ամէն բան ետ դարձնելու և աւելի ալ բարձրացնելու հրապուրիչ խոստումներով Քիւթիւրը համոզեց ետ գալ։ Բայց իսկոյն արգելական պահեց զայն՝ սենեակի մը մէջ բանտարկուած, և զայն ու փոքրաւորն ալ նեղեց ու տանջեց, որ պահծու եղածները յայտնեն, և ոչ իսկ ներեց սենեակէն ելնել զատկին օրը, 1746 մարտ 30'ին։ Զատկին չորրորդ օրը, ապրիլ 2'ին, կաթողիկոսարանի բարապանները, Քիւթիւրը չապիկով մը կը մերկացնեն, և գետին տարածելով գլուխն ու մօրուքը կը գերծեն, և մաշկէտայ հանդէբէջ մի ֆարշանօյ վրան նստելով Սեւան կը տանին, և ապրիլ 6'ին մութ նըկուղ մը կը բանտարկեն, օրական չորցած հաց մը միայն տալու պայմանով, և բանտը երկու պահապաններու կը յանձնեն (ՋԱՄ. Գ. 832)։ Վեց ամիս մնաց Քիւթիւր այդ վիճակին մէջ, և հազիւ 1746 սեպտեմբերին ատեններ Սեւանի միաբաններու միջնորդութեամբ չղթաները քակելու, և վանքին մէջ ազատ շրջելու հրամանը առնուեցաւ Ղազարէ։ Քիւթիւր վերջին յուսահատութեան մատնուած, ալեկոծութեան պահուն, և առանց թիակի լքուած նաւակով մը յաջողեցաւ ցամաք ելնել, և յանծանօթս ու տեսակ տեսակ դժուարութիւններով կրցաւ Կարս հասնիլ, և անկէ ալ առանց ճանչցուելու Կարին երթալ։ Ղազար զայն իմանալով, փորձեց Երեւանի Գարսիկ կուսակալին ձեռքով և առատ կաշառքներով, Քիւթիւրը ձերբակալել ու բերել տալ, սակայն Կարնոյ կուսակալը պինդ կեցաւ, և չյանձնեց անձ մը՝ որ ապաւինեալ էր յերկիր իշխանութեան Օսմանցւոց, և Քիւթիւրը յորդորեց Կ-Պոլիս երթալ, և հոն իւր գործերը կարգադրել (ՋԱՄ. Գ. 834)։

**2024**. Քիւթիւրին Կ-Պոլիս համնիլը կ'իյնայ 1747'ին սկիզբները, և յայտնի է թէ ինչ պիտի ըլլային անոր պատմածները մայրաքաղաքին եկեղեցականներուն և մեծամեծներուն առջև։ Քիւթիւրին հետամտութիւն ալ Էջմիածին համդարտութիւն չի գտաւ, զի Ղազար շարունակ նորանոր գրգռութիւններ կը յուզէր իր վարմունքովը։ Քարաքաշ չյիշուիր այդ միջոցին, և կ'երևի թէ կողմ մը քաշուած էր, իսկ Ղազար իր ատելութիւնը դարձուցած էր Յակոբ Շամախեցի և Յովհաննէս Շիրաձի վարդապետներուն վրայ (ՋԱՄ. Գ. 839), թէպէտ վերջինը Քիւթիւրի և Քարաքաշի դէմ քսութիւններ յօրինողն էր (§ 2023)։ Ղազար վանքէ դուրս ալ ազգային մեծամեծներուն վրայ կը բռնանար, և գլխաւորապէս իրեն դէմ գրգռուած էին Յարովէն և Խաչիպապ, Երևանի հասարակութեան գլխաւորները, առաջինը քալանթար՝ որ է ազգապետ, և երկրորդը մելիք՝ որ է գործակալ։ Սոյն միջոցին Պարսից տէրութիւնն ալ անիշխանութեան մատնուած էր։ Նատիր շահ իմանալով Պարսիկ մեծամեծներուն իրեն դէմ ըլլալը, կը պատրաստուէր Աֆղաններու ձեռքով անոնք կոտորել, երբ անոնք կանխեցին և զինքն սպաննեցին 1747'ին։ Աթոռ վրայ իրենց ժառանգութիւնը իրարմէ յափշտակելու կը մրցէին, Ալի-Ատիլ եղբօրորդին Թամրէզի, և Շահռուհ թոռ Մէշէթի մէջ թագաւորեցին, և իրենց ազգականները սպաննել տալով, և զիրար տապալելով կ'ուզէին զօրանալ։ Լոռիստանի իշխան Ալի-Մէրտան ալ՝ Սօֆիներու ցեղէն Իսմայէլ անունով ութը տարեկան տղայ մը շահ հռչակել տալով, անոր անունով կը տիրապետէր Սպահանեան գաւառները։ Ուրիշ նահանգներու մէջ ալ կողմնակալներ մէկ մէկ փոքրիկ վեհապետներու ձեւ առած էին (ՏՊՊ. 366)։ Ղազար կարծելով պարագայէն օգտուիլ, Յարովէնին և Խաչիպապին սպառնացաւ տէրութեան մատնել, որուն վրայ անոնք կանխեցին զինքն մատնել Ալի-Ատիլի, որ Հայկական գաւառներու վրայ կ'իշխէր, թէ Կարին փախած Մանուչար Հայ իշխանին 4000 թուման դրամները Ղազարի մօտ աւանդ են։ Ղազար թագաւորէն կանչուեցաւ, և աւանդը իրմէ պահանջուեցաւ, 1500 թուման ալ տուգանքի յաւելուածով։ Ղազար անճար մնալով զայն վճարել, աթոռին թանկագին իրերէն մաս մը վաճառելով և հարկապահանջները կաշառելով, հնարեցաւ Կարին փախչիլ, մտածելով այն տեղ հայրապետանոց հաստատել, որուն չհաւանեցան Կարնեցիները։ Ղազար բռնի կերպով իր նկատմամբ գոհունակութեան գիրեր ստորագրել տալով Կ-Պոլիս և Տաճկաստանի ուրիշ կողմեր ղրկած էր, սակայն միաբաններ ճշմարտութիւնը յայտնող գիրեր հասուցած էին, և Կ-Պոլսոյ ամբողջ Հայութիւնը, Նալեան պատրիարքին առաջնորդութեամբ, Էջմիածինի մէջ կարգ ու սարք հաստատելու և անտեղութեանց հիմնական դարման տանելու պէտքը զգացեր էին։ Անշուշտ Ղազարի բռնազբօսիկ գիրերը ազդեցութիւն պիտի չկարենային գործել, քանի որ Քիւթիւր ականատես վկայ և անձամբ փորձառու՝ Կ-Պոլիս կը գտնուէր։ Ղազարի Էջմիածինը թողլով Կարին փախչիլը և այն տեղ հաստատուիլ ուզելը, արմատական միջոցներու պէտքը զգացուցին, և պատրիարքարանով ու ժողովուրդով որոշում տրուեցաւ, որ Պետրոս Քիւթիւր ու Սահակ Ահագին վարդապետներ Էջմիածին դառնան, և միաբանութեան հետ պատշաճը մտածեն, և մինչև իսկ Ղազարը փախած նկատելով, նոր կաթողիկոս մը ընտրեն և նստեցնեն (ՋԱՄ. Գ. 839)։

**ՋԱՀԿԵՑԻՆ ՓԱԽՍՏԱԿԱՆ**

**2025**. Երբոր Ղազար Էջմիածինէ խոյս տուաւ, պետական հարկահանները Մայրաթոռ եկան և միաբաններ նեղեցին ու տանջեցին Ղազարին պարտքին համար, և երբոր ուրիշ կերպով արդիւնք չունեցան, եկեղեցական ինչքերը և զարդերը գրաւեցին (ՋԱՄ. Գ. 838), և վեց ձիաբեռ ապրանք թագաւորին տարին։ Սակայն միաբաններ աղաչաւորներ և գիրեր հասուցին, թէ պարտքը վանքին և աթոռին չէ, այլ Ղազարին անձնապէս առացած աւանդի մը երեսէն։ Թագաւորը իրաւունք տուաւ միաբաններուն, հարկահանն ալ պատժեց, ըսելով թէ գերամ Ղազարս պահանջեմ և ոչ զանօթս վանացն, ու ապ-

**ՔԻՒԹԻՒՐ ԿԱԹՈՂԻԿՈՍ**

րանքները ետ դարձուց, և Ղազարին մասին կարգադրութիւնը միաբանութեան թողուց (ՇԱՀ. Ա. 228)։ Երբոր հարկահանները ապրանքներով մեկնեցան, Ղազար այդ լուրին վրայ պարտքը վճարուած սեպելով, Էջմիածին դարձած էր, որ առեն Կ-Պոլսէ ղրկուած վարդապետներն ալ հասան։ Որպէսզի իւր տապալման առջեւն առնէ, անոնց վրայ ամբաստանագիրներ մատոյց, թէ Կ-Պոլսէ եկած կէթէօ էն, և թէ ինքն Պարսից պետութեան հաւատարիմ է։ Սակայն Ղազարի անձը կասկածաւոր եղած և անունը կոտրած էր Պարսից կառավարութեան առջեւ, և ամբաստանութեան ականջ չի կախուեցաւ, այլ Թամրէզէ հրահանգ տրուեցաւ Երեւանի կուսակալութեան, որ միաբանութիւնը հարցաքննէ, և ղըր ընդըրեօյէն նուտա, նա լէյէ նոյա կէօնտէրմէլի (ՋԱՄ. Գ. 838)։ Կուսակալը Երեւանի մէջ ատեան կազմեց, Ղազար ալ հոն կոչուեցաւ, միաբանութեան գլխաւորներն ալ ներկայացան։ Քիւթիւր և Անագին Տաճկաստանցոց կողմէ խօսեցան, և Ղազար պարտաւորուեցաւ, և պետական հրամանով պաշտօնանկ հռչակուեցաւ, և Սեւան կղզին աքսորուեցաւ, ուր ինքն Քիւթիւրը բանտարկած էր (§ 2023), և միաբանութեան հրաման տրուեցաւ Էջմիածին դառնալ և ընտրութիւն կատարել (ՋԱՄ. Գ. 840)։ Պահ մը ուզուեցաւ Սահակ Անագինը, Կոլոտի աշակերտութենէն, կաթողիկոսութեան բարձրացնել, իբրեւ Էջմիածինի խըռովութիւններէն անմասն մէկ մը. բայց նա յանձնառու չեղաւ, և Քիւթիւրը յառաջ կոչեցին, անոր ալ դժկամակութեան յաղթելու համար խոստացան պաշտպան լինել նմա յամենայն ի վերայ, և այսպէս Պետրոս Այնթապցի, մականուանեալ Քիւթիւր, կաթողիկոս օծուեցաւ մայրտաճարին մէջ 1748'ին ամսաթիւը անորոշ։ Միաբանութիւնը իւր գործին արդարացումը ապացուցանելու համար, ընդարձակ գրութիւն մը պատրաստեց, որուն մէջ բացատրեց զամենայն յանցանս Ղազարու, և զայն ի բաղում դատէնս ցրուեց ամէն գլխաւոր վիճակներ։ Այդ գիրին ստորագրած էին 21 եպիսկոպոսներ և 19 վարդապետներ, և 1748 մայիս 20 թուական կը կրէր։ Նկատելով որ այդ գիրը ամէն գործ վերջացնելէն ետքը գրուեցաւ, կարնոյ և Զմիւռնիոյ մէջ Ղազարու համակիրներուն ալ միտքը հանդարտեցնելու համար, և օծումը անկէ առաջ տեղի ունեցած էր (ՋԱՄ. Գ. 841), իրէպ է դատելին մօտիկ կիրակիներէն մէկուն դնել օծման ամսաթիւը։ Ջատիկը այն տարին ապրիլ 10'ին հանդիպած էր։

**2026.** Եղելութեան պատմական մասը ներկայելէն ետքը պէտք է նկատողութեան առնել թէ ինչ տեսութիւն պէտք է ունենալ Ղազարու գահընկէցութեան, և Պետրոսի կաթողիկոսութեանը վրայ։

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ**

Հնար է՞ արդեօք Ղազարը պաշտօնապէս և օրինաւորապէս դադարած ըսել, թէ ոչ Պետրոսը հակաթոռ մը նկատել։ Գործին օրինաւորութեան մասին չբաւեր որ Ղազար իրօք անարժան և յանցապարտ մէկը ըլլայ, այլ պէտք է որ անոր պաշտօնանկութիւնն ալ օրինաւոր ձեւակերպութեամբ վճռուած ըլլայ։ Իրաւ է որ միաբանութիւնը իւր 40 անդամակիցներու միաձայնութեամբ անոր դատապարտութիւնը ստորագրեց, և Տաճկահայեր իրենց կողմէ լիազօր իշխանութեամբ պատգամաւորներ ղրկեցին, և Պարսկահայեր ալ ձայնակից և կամակից գտնուեցան տրուած որոշումին, սակայն այդ պարագաներ բաւական չեն նկատուիր եկեղեցական ժողովի մը գումարումը կայացնելու, որ միայն ձեռնհասն է կաթողիկոսի գահընկէցութեան վճիռը արձակելու։ Ամէն պարագայի մէջ իրական կը մնայ, թէ Ղազարի վարումը Երեւանի կուսակալին ատեանը վճռուեցաւ, ուր եկեղեցականներ աւելի վկայի՝ քան դատաւորի դերը կը վարէին։ Ըստ այսմ պէտք կ'ըլլար ըսել թէ Ղազար եկեղեցական քննութեամբ և վճռով պաշտօնանկ եղած չէ։ Միւս կողմէն Պետրոս իւրովի և կամ քանի մի կամակիցներու ձեռքով աթոռը յափշտակող կամ գրաւելու յաւակնող մը չէ. աթոռը դատարկ նկատուած ատեն միաբանութեան ընտրութեամբ յառաջ կոչուած է, ինչպէս եղած էին ուրիշ օրինաւոր կաթողիկոսներն ալ, և ամէնուն հաւանութեամբ պաշտօնը սաանձնած է, և հեռաւորներն ալ անհակառակ ընդունած և օրինաւոր ճանչցած են, և Յակոբ Նալեան պատրիարքն ալ

ըստ այնմ պաշտօնապէս հռչակած է, եկեղեցւոյ բոլորէն յայտարարելով և բացատրելով Թղթոյն Տեառն Ղազարու, պատշաճաւոր վկայութեամբ և բանիւք արժանահաւատ անձանց (ՁԱՄ. Գ. 840)։ Բայց եթէ Քիւթիւրը հայրապետական աթոռին տէրը ճանչնանք, պէտք կ'ըլլայ վերջէն Ղազարը հակաթոռ ըսել, երբոր արքունի պաշտպանութեամբ և դրամի զօրութեամբ կրկին աթոռը ձեռք անցուց։ Խնդիրին մէջէն ելլալու համար, և միանգամայն գործին դժնդակ ձեւ մը չտալու համար, մենք կը հաւանինք ըսել թէ Ղազար չկորսնցուց իր կաթողիկոսական իրաւունքը, երբոր Պարսից կուսակալին վճռով, իսկ ազգին և եկեղեցականութեան լուռ մըկայութեամբ՝ պաշտօնանկ հռչակուեցաւ, և թէ միայն պատահական պարագաներով պաշտօնը վարելէ արգելուեցաւ։ Իսկ Պետրոս որ կանոնական ձեւակերպութեանց հետեւողութեամբ ընտրուեցաւ, հակաթոռի կերպարանը չունեցաւ, այլ օրինաւոր ձեւով պաշտօնը վարելու կոչուեցաւ։ Այդ կերպով կաթողիկոսական պաշտօն վարողները մենք Որոտակէց անուանեցինք, քանի անգամ որ պարզ բռնութեամբ աթոռին տիրացած չէին, և նոյն ձեւով կը նկատենք Պետրոս Բ Այնթապցի, Քիւթիւր մականուանեալ կաթողիկոսը։ Բայց ինչպէս ուրիշ աթոռակիցները, այն ալ կաթողիկոսներու շարայարութեան չենք անցըներ, թէպէտ սովորական ցուցակներ անցուցած ըլլան (ՃԱՄ. 640)։ Երեւանեցին և Շահխաթունեան ալ Պետրոսի անունը չարքէն դուրս թողած են (ՇԱՀ. Ա. 228)։

**2027.** Խնդիրը նկատեցինք պարզապէս կանոնական ձեւակերպութեան տեսակէտէն, ապա թէ ոչ անհատական

**ԱՆՁԵՐՈՒ ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ**

արժանաւորութեան տեսակէտէն, երկուքն ալ հաւասարապէս անձնահաճ և չահադէտ անձեր կը ներկայանան, մրէժխնդիր և անիրաւ, որք ոչ մի կերպով յանձնարարելի չէին կրնար ըլլալ։ Արդիւնաւորութեան տեսակէտէն, Ղազար, որչափ ալ բանաւոր և քինախնդիր, իր մրցակցին վրայ ուսումնական առաւելութիւնն ունի, գլխաւորապէս իր երկասիրած Դրախտ Ցանկալի գիրքով, ամբողջապէս հայադաւանութեան պաշտպանութեան նուիրուած, իրեն տրամադրելի և ժամանակին ծանօթ հրմտութեանց փաստերով։ Հրատարակած է նաև Սրբազան մը, և Աստուածաշէր աղօթագիրք մը։ Իսկ չինարարութեանն ալ ընտիր նմոյշներ են Մայրաթոռոյ վեհարանը և Ղազարապատը, որ մինչեւ մեր օրերը կաթողիկոսարանի պէտքը լրացուցին, թէպէտ երկրորդը քանդուեցաւ արդէն, և առաջինն ալ նոյն բախտը պիտի ունենայ, երբ նորաշէնը աւարտի։ Պետրոս ընդհակառակն իր եաեւէն բան մը թողած չէ, և պէտք չէ մոռնալ հանել այն տգեղ դերը զոր խաղաց Կոլոտի դէմ (§ 1986)։ Ուրիշ պարագաներու մէջ ալ բարձր և վեհ զգացումներու նշան մը չէ տուած, և բոլոր ըրածն ու Ղազարի դէմ վարած դերը անհատական թշնամութեան կամ անձնական շահադիտութեան նկարագիրը կը կրեն (§ 1991)։ Պետրոս տեղ մը իբր Կարնոյ առաջնորդ կը յիշուի (ՇԱՀ. Ա. 228), սակայն ժամանակագրական հաշուով չենք գտներ սահման մը, որ այդ պաշտօնը վարած ըլլայ։

**2028.** Պետրոս կաթողիկոսական աթոռը գրաւելով, որեւէ արդիւնաւորութիւն ցոյց տուած չէ, և Երեւանեցին

**ՔԻՒԹԻՒՐ ՏԱՊԱԼՈՒԱԾ**

ու Շահխաթունեան բառ մըն ալ չունին անոր գործունէութեան վրայ։ Միաբաններն ալ շահէլ գիտցած պիտի չըլլայ, որ անոր պաշտպանութեան համար չարժում մը չըրին, և Ղազարի վերադարձին համակերպեցան, գուցէ և նպաստեցին իսկ։ Այդ միջոցին Իպրահիմ Թամրէզի նոր կուսակալը, Նատիրի եղբօրորդին, և ոչ Նատիրի եղբայր Իպրահիմը (§ 1978), իր եղբօր Ալի-Աախլին դէմ ելաւ, զայն ձերբակալեց ու կուրացուց, և անոր տեղը անցաւ (ՏՊՆ. 365)։ Թագաւորի փոփոխութեամբ՝ հրամաններուն ալ փոփոխութիւնը դիւրացաւ, և Ղազարի եղբայր Յովսէփ քահանան (§ 1993) փութաց անոր մօտ երթալ, և պատշաճ ընծաներով ու միջնորդութիւններով յաջողեցաւ Ղազարի ազատութեան և կաթողիկոսութեան վերադառնալուն հրովարտակը ստանալ։ Ղազար հրովարտակին զօրութեամբ Սեւանի բանտարկութենէն ազատեցաւ, և յանկարծ էջմիածին հանելով

Պետրոսը ձերբակալից, առանց անոր փախուստի միջոց թողլու։ Այս երկրորդ անգամ աւելի սաստկացած էր Ղազարի քինախնդիր գրութիւնը Պետրոսի դէմ, զայն չըդթայի զարնել տուաւ, և ղրկեց ուխտ Սեւան, կասկածելով անապատին միաբաններուն բարեկամութենէն և նորէն փախչելու հաւանականութենէն (§ 2023), այլ օտարեց Ջահուկ՝ իւր ընիկ գաւառը, անշուշտ իրեն եղբայրներուն ու մերձաւորներուն պահպանութեան վստահանալով, և հոն խիստ բանտարկութեան ենթարկեց։ Պետրոսի կաթողիկոսութիւն վարելու անուղութիւնը ալէօ փօհ բուսած է հաւաստապէս ամէնէն (ՋԱՄ. 31), և 1748 ապրիլէն հաշուելով, տապալումն ու բանտարկութիւնը կը համդիպին 1749 փետրուարին։ Պատմիչներ չեն նշանակած թէ ինչչափ ատեն մնաց Քութիւր Ջահուկի արգելանին մէջ, միայն յայտնի է թէ այլեւս չազատեցաւ և բանտին մէջ մեռաւ։ Ամէն պարագայի մէջ Ղազարէ առաջ մեռած կ'ըլլայ 1750'ին, թէ ոչ ազատութիւն ձեռք ձգած կ'ըլլար։ Մահուան կերպին վրայ ոմանք կը գրեն թէ Ղազարի եղբօր Յովսէփի երէցկինը՝ Խանում խաթուն զայն կը խնամէր, և երէցկինին մեռնելուն վրայ անինամ Յոցէալ լօնէնցաէ օվէ Ն Դէօօօ (ՋԱՄ. Գ. 841)։ Բայց աւելի հաւանական է Յովսէփ Ջուղայեցի քահանային պատմածը, թէ Քութիւր վանքի մը մէջ փակուած էր, և վանքը կողոպտելու եկող աւազակներէն խօցեալ էլի- Ն լսէնանէցա- (ՇԱՀ. Ա. 229)։

**2029**. Պետրոսի տապալումն 1749 տարին, Կ-Պոլսոյ մէջ ալ իւր արձագանգն ունեցաւ։ Պատրիարքութեան աթոռին շուրջը դադարած էին մրցակիցներու պայքարները, և Կոլոտի 25 տարի անընդհատ պաշտօնավարութենէն յետոյ 8 տարի էր, որ Նալեան ալ պատրիարքութիւնը կը վարէր, երբ յանկարծ պարզ երկինքի վրայ գոռացող որոտումի պէս պատրիարքական աթոռը յափշտակող մը երեւցաւ։ Խնդիր և վէճ չկար հրապարակի վրայ, պատրիարքի դէմ ոտգոհութիւններ բարձրացած չէին, միայն Յակոբ պատրիարքին վաղ էլմանօբօրձօօբեանց եօր-

**ՊՐՈԽՈՐՈՆԻ ՇՓՈԹԸ**

եանց յանցէմանեցէալ քանի մը ազգեցիկ նոր էլիանէ կային, որոնք ուզեցին պատրիարքէն վրէժ լուծել։ Իրենց կամակից գտան Երուսաղէմի միաբան, և քիչ առաջ անկէ եկած, Պրոխորոն վարդապետ մը Սիլիստրեցի, կամ բստ այլոց Ռուսճուքցի, Նօքնաբօր Ն չօղալօ անոր անունին հրովարտակ հանեցին, և 1749 մարտ 26, զատկի օրը (ՍՐԳ.), բազմութեամբ արքունի սպասաւորաց Մայր եկեղեցին բերին, երբ տակաւին եկեղեցին լեցուն էր, և Նալեան պատրիարք ալ այնտեղ։ Ժողովուրդը և մեծամեծներու մեծամասնութիւնը, անցուդարձէն անգիտակ, զայրացմամբ դիմադրեցին և Պրոխորոնը ներս առնել չուզեցին, սակայն արքունի բարապաններ և զինուորականներ բռնութեամբ ներս տարին, իսկ Նալեան խոհեմութիւն սեպեց խոյս տալ, և ապաւինիլ Սահաթճի Եուսուֆ ծանօթի մը տունը (ՋԱՄ. Գ. 862), որ նախահայրն է այժմեան Եուսուֆեանց բազմաճիւղ գերդաստանին։ Միւս օր մարտ 27, զատկի մեռելոցին առտուն, ժամերգութեան միջոցին Պրոխորոն եկեղեցի կ'իջնէ, և երբ ասցէն շնեցօ օէրն, ժողովուրդին կը դառնայ խօսելու և ձանօօցօմ ընելու միտքով։ Բայց դեռ բերանը չբացած, ժողովուրդէն մէկ մը, որուն համար վէօյեցէն եօլ Պէօլօլօճէ մը, պոռաց, վէնէ օօլէր. չԹօնօբ դօօրէօրէն կ'օօլէնէ, և ժողովուրդը բոլոր մէկ բերան, նոյն աղաղակը կը կրկնէ, և Պրոխորոնին վրան կը խուժէ։ Յանկարծ Բօցեալ էլի- փօօանն դօհօրանէն, Ն էլէն անօէ էէնէլէրէ Ն լօօխօօօրէ բաւական թուով, որոնցմէ ոմանք Պրոխորոնը էդօօրէօրէօրանն փօրէն, և ուրիշներ բիրերով և մահակներով ժողովուրդին վրայ յարձակեցան, և անխնայ կերպով հարուածեցին, մինչեւ իսկ օմանց էլօօխէն դօօօօօեօլ էր, Ն օմանց Բէօէն եօխօօեօլ, և խուճապին մէջ օէօօն Բօբօօէլ էէլէրօյ ձօձօնց, այնպիսի ողորմելի վիճակ մը, որ ականատեսը կը գոչէ, թէ Բօղմօէօօրն Տէր ողորմեա' էօօ ցոյց օօցէ (ՍՐԳ.)։ Այդ խառնաշփոթութեան վրայ գործը կառավարութեան և մինչեւ իսկ սուլտան Մահմուտին հասաւ, ազգին կամքին հակառակ ոմանց բռնաբարութեան արդիւնք ըլլալն իմացուեցաւ, պատճառ եղողներ պատժուեցան (ՋԱՄ. Գ. 863), և Պրոխորոնն

ալ ապրիլ 2'ին, Նոր կիրակի օր. էջ–ցին է Կեօմիւ-լէ ––ջի-են է Ն–– էՖ. և Սամսոն զբր-կեցին թերդարգել բանտարկութեան (ՍՐԳ.)։ Երբոր նոր պատրիարք ընտրելու հրամանը եկաւ, Նալեան այլեւս յանձնառու չեղաւ, և միաձայն հաւանութեամբ պատրիարք ընտրուեցաւ, Մինաս վարդապետ Ակնեցի, Գլակայ Ս. Կարապետի առաջնորդ, որ այդ օրեր Կարին կը գտնուէր, և մինչեւ որ Կ-Պոլիս հասնի, տեղակալ նշանակուեցաւ Յարութիւն վարդապետ Պալաթցի, Կոլոտի աշակերտներէն (ՁԱՄ. Գ. 863), որ պէտք է ըլլայ աշակերտաց ցուցակին սկիզբը Հեզահոգի մականուամբ նշանակուածը (ԿՈԼ. 70), զոր և էէլ–յեցին է ֆ–լ–յէ ֆ––ան, է Նոյ–ամ լ–թ–րէ օրն (ՍՐԳ.), այսինքն 1749 ապրիլ 8'ին։ Իսկ Նալեան Կ-Պոլիս չմնաց, և Պրուսայի առաջնորդութիւնը ստանձնելով, փութաց երթալ իր պաշտօնատեղին։ Որոշակի չունինք թէ որ օր Մինաս եկաւ և աթոռը նստաւ, բայց մերձաւոր հաշուով հազիւ մայիսի վերջերը Կ-Պոլիս հասած կ'ըլլայ։

**ՄԽԻԹԱՐԻ ՄԱՀԸ**

2030. Միեւնոյն օրերը կը հանդիպի Մխիթարեան միաբանութեան հիմնադիր Մխիթար աբբահօր մահը Վենետիկի մէջ, 1749 ապրիլ 27'ին, կամ հին տոմարով 16'ին, կիրակի օր։ Մխիթար երկար տարիներէ իվեր դալուկով կը տառապէր, որ է դեղնացաւ (ՄԽԻ. 409). 1739'ին տագնապ մը անցուցած էր, որ կրկնուեցաւ 1746'ին, և անկէ ետքը միշտ Ձեր Հէ–ոփ Ն Ձէր ––ոլջ ապրեցաւ, իսկ 1749'ին Մեծպահքին մէջ հիւանդութիւնը ու տկարութիւնը սաստկացան, և ինքն ալ զգաց իր կենսական ոյժերուն սպառիլը։ Ապրիլ 4'ին, հին տոմարով մարտ 24'ին, աւագ ուրբաթ երկու տոմարներուն ալ, ցաւերը կը սաստկանան, զատկին երկրորդ օրը թօշակ կ'ընդունի, և ցաւերով կ'անցընէ այլեւս երեք շաբաթներ, մինչեւ որ հոգին կ'աւանդէ Յինանց չորրորդ կիրակէին առտուն, 1749 ապրիլ 16/27'ին, 74 տարեկան, և միւս օր յուղարկաւորութիւնը կատարուելով կը թաղուի Ս. Ղազարի Եկեղեց––յն ֆ––էն Ձէջ–եզը (ՄԽԻ. 415)։ Միւս տարին վերատին կը փոխադրուի բեմին վրայ, յատուկ տապանագիրով մը, որ իմաստից բարձրութենէն աւելի' խրթին բառերու կուտակումով կազմուած է (ՄԽԻ. 417)։ Մխիթարի անձին վրայ գնահատումներ, այնչափ և այնպիսի ընդարձակութեամբ, և մինչեւ իսկ չափազանցութեամբ գրուած են իրեններէն, որ նոր տեսութիւն մը ընելու տեղ չէ մնացած։ Մենք իբրեւ պարզ պատմաբան, և ոչ իբրեւ ոգեւորեալ ներբողաբան, եղելութիւնները յառաջ բերինք իրենց իսկութեան մէջ, որպէսզի ընթերցողը կարենայ իր դատողութիւնն ընել խոհական չափաւորութեամբ։ Մխիթարի գործերը երկու ճիւղի կրնանք բաժնել, հռոմէադաւանութեան տուած օգնութիւնը, և հայ գրականութեան տուած մղումը։ Անտարակոյս է որ հռոմէադաւանութիւնը շատ բան կը պարտի Մխիթարին, որ իր անձնական աշխատութեամբ, և հիմնած միաբանութեամբ, և կատարած հրատարակութեամբ, ոչ միայն հռոմէադաւանութեան տարածուելուն և կազմակերպուելուն նպաստեց, այլ և նոյն իսկ հայադաւանութեան մէջ շատ մը հռոմէական միտքեր ներմուծելու առիթ տուաւ իր հրատարակած գիրքերով, զորս Մայրաթուոյ կաթողիկոսին անունին մակագրութեամբ՝ յանգգաստս ընդունելի կ'ընէր Հայերուն, իբրեւ անխառն Հայ ուղղափառութիւն։ Բայց մենք նորէն պիտի կրկնենք, թէ Մխիթար մոլեռանդ հռոմէադաւանէ աւելի, նախանձայոյզ հաշտարարի զգացումը ունեցող մըն էր։ Արեւմտեան կամ Եւրոպական կամ աւելի ճիշդ՝ Լատինական ուսմանց և զարգացմանց փայլէն շլացած, և անզուսպ ձգտումով անոնց հետեւելու ձեռնարկած, պատրաստ էր հայադաւանութենէ և նոյն իսկ Հայ ինքնութենէ բան մը զոհել, որպէսզի Լատինական ուսումէ բան մը առնելով Հայութեան կարենայ բերել։ Մեր այս տեսութեան ակներեւ փաստն է, այն ըմբռնումը, որով Լատիններու և մոլի լատինամիտներու մօտ Մխիթար անկեղծ և կատարեալ հռոմէադաւան չկարծուեցաւ, և այդ ըմբռնումը իր միաբանութեան վրայ ալ տեւողապէս պահուեցաւ։ Իսկ Հայ գրականութեան համար ունեցած երախտիքը, աւելի պայծառ է։ Հայութիւնը փայլեցնելու համար, դաւանականը զոհած ատեն գրականին դարձուց իր այժմ, երբ պարագա-

*ներն ալ զինքը Արեւմուտքի կողմը նետեցին, երբ անձնական հալածանքի միտքէն չուարած՝ Զմիւռնիոյ նաւահանգիստին մէջ առաջին գտած նաւը կը նետուէր։ Արեւմուտք իրեն աղջեւ դիւրութեան ասպարէզ մը բացաւ, որուն վրայ սկսաւ քալել։ Սակայն ինքն անձամբ չեղաւ հին դրականութեան երախտաւորը եւ նախնեաց մատենագրական գանձերը մէջ տեղ հանողը։ Իր հայկաբանութիւնը՝ ժամանակակից եւ Արեւելքի մէջ մնացող ու այնտեղ գիրքեր գրող ու հրատարակողներէն բարձր չէ։ Իր մեծ արժանիքը եղաւ նպաստաւոր պարագաներու ներքեւ հիմնարկութիւն մը ընել, զոր իրմէ ետքը եկողներ յաջողապէս արդիւնաւորեցին։*

**2031.** *Տարի մը կը յապաղի Մխիթարի յաջորդին կամ Մխիթարեան միաբանութեան*

**ՄԽԻԹԱՐԻ ՅԱՋՈՐԴԸ**

*առբահօր ընտրութիւնը, ինչ որ կը ցուցնէ, թէ գաղափարներու եւ սեւութիւններու անհամաձայնութիւններ տեղի ունեցած են։ Վերջիվերջոյ ընտրութիւնը կը կեդրոնանայ, ոչ թէ Մխիթարի հին գործակիցներէն եւ արդիւնաւոր աշխատակիցներէն մէկուն վրայ, այլ վերջիններէն եւ միայն 1739 ապրիլին քահանայացած միաբանի մը վրայ, ինչպէս էր հայր Ստեփանոս Մելքոնեան, ընիկ Կ-Պոլսեցի, տակաւին 33 տարեկան (ՑՈՒ.217)։ Մելքոնեան ընտրուեցաւ 1750 ապրիլ 6ին, եւ պաշտօնի մտնելուն հետ մուտ գործեցին Ս. Ղազարի վանքը՝ հինի եւ նորի վէճերը, այսինքն է հին ուղղութեան պաշտպաններուն՝ եւ նոր ուղղութեան մը հետեւողներուն պայքարները։ Մելքոնեան, ինչպէս տարիքն ալ ու իր ընտրութիւնն ալ կը ցուցնէին, անմիջապէս յետնամուխ կ'ըլլայ Մխիթարի կոչերը փոփոխել, եւ նորաձեւութեամբ նոր կանոնադրութիւն մը կազմելու կը ձեռնարկէ, եւ տժգոհութիւնները այնչափ կը զօրանան, որ գործը մինչեւ միաբանութեան պառակտելուն, եւ մի մասին բաժնուելով նոր ճիւղ մը կազմելուն պատճառ կ'ըլլայ (ՑՃՐ.4), որուն վրայ իր կարգին։*

**2032.** *Միեւնոյն 1749 տարւոյն մէջ մեռաւ հայ-կաթոլիկ պատրիարքութեան կամ կաթողիկոսութեան հիմնադիր Աբրահամ Արծիւեանն ալ։ Վերջին անգամ Լիբանան դառնալէն ետքը 1745ին (§ 2016), կ'աշխատէր այդ*

**ԱՐԾԻՒԵԱՆԻ ՄԱՀԸ**

*առանձնութեան մէջ իրեն յատուկ հայրապետանոց կազմել, զի անհնար էր Անտոնեանց վանքին մէջ մինչեւ վերջ հիւրընկալուիլ եւ միաբաններուն վրայ ծանրանալ, թէպէտեւ առանց անոնց՝ բան մըն ալ գործելու եղանակ չունէր, վասնզի անոնցմէ դուրս ալ պաշտօնեայ չունէր։ Իր իրաւասութեան սահմանները ընդարձակելու փափաքն ալ Աբրահամի զօրաւոր ձգտումներէն մէկն էր, սակայն մէկ կողմէն պապական կոնդակին բացատրութիւնը, միւս կողմէն Լատին եպիսկոպոսին արգելքը (§ 2016), եւ նոյն իսկ Կ-Պոլիս երթալու համարձակութիւն չունենալը, զինքն հիմնապէս կասեցուցին, եւ այլ եւս այդ խնդիրը չյուզուեցաւ, եւ վերիվերոյ Կիլիկիոյ կաթողիկոսութեան սահմանները, նորաստեղծ հռոմէադաւան կաթողիկոսութեան սահման ճանչցուեցան։ Այդ տեսութեամբ, Մելքոն Թուխմանեան Մամպրէոյ հռոմէական եպիսկոպոսը, թէպէտ Աբրահամէ առած էր իր ձեռնադրութիւնը եւ անոր ընտրութեան մասնակցած (§ 2009), բայց Աբրահամի հպատակութիւնը չուզեց ընդունիլ, հարկաւ հիմնուելով այն պարագային, որ Տիարպէքիր Մամպրէով մէկտեղ էջմիածինի՝ եւ ոչ Սսոյ աթոռին ենթարկեալ վիճակ էր. բայց Հռոմ Աբրահամի իրաւունք տուաւ (ԱՂՔ. Ա. 18)։ Երբոր Աբրահամ ծերութեան եւ հիւանդութեան պատճառով հետզհետէ կը տկարանար, յաջորդութեան խնդիրը Յակոբ եւ Իսահակ եպիսկոպոսներուն հոգածութեան նիւթ եղաւ, եւ ասոնց առաջարկութեամբ երեք Անտոնեան միաբաններ եւս, Պետրոս Ներսէսեան՝ նախորդ աբբայն, Յովսէփ Այվազեան՝ ներկայ աբբայն, եւ Պօղոս Սամանճեան վաստակաւոր վարդապետը, եպիսկոպոս ձեռնադրուեցան Քրէյմի Ս. Փրկիչ եկեղեցւոյն մէջ, 1749 յունիս 22ին (ԱՆՏ.), Այնթապի եւ Եդեսիոյ եւ Դամասկոսի թեմերուն անուններով (ԱՂՔ. Ա. 18)։ Միեւնոյն առեն բանակցութիւններ կը կատարուէին, Անտոնեանց վանքէն դուրս հայրապետանոցի համար տեղ մը ստանալու.*

և երբ գործը լուծման յանգելու մօտ էր, Աբրահամ Պետրոս Արծիւեան հռոմէականաց կաթողիկոսը վախճանեցաւ 70 տարեկան, Քրէյմի վանքին մէջ, 1749 հոկտեմբեր 1'ին, Վարագայ խաչի կիրակին, և միւս օր թաղուեցաւ Ս. Փրկիչ եկեղեցւոյն մէջ: Քիչ օր ետքը հոկտեմբեր 13'ին կնքուեցաւ հայրապետանոց ըլլալու սահմանուած տեղւոյն, Պզոմմառի կամ Զմմառի բլուրին նուիրատուութեան մուրհակը, եպիսկոպոսներուն և հողատէր Խազնեան իշխաններուն միջև (ԱՂՔ. Ա. 19): Յաջորդին ընտրութեան համար հոկտեմբեր 14'ին գումարուեցան հինգ եպիսկոպոս եղող Անտոնեան միաբանները, և ուրիշ վանքին մէջ գտնուողները, և կաթողիկոս հռչակեցին Յակոբ Յովսէփեան Բերիոյ եպիսկոպոսը, Անտոնեանց հիմնադիր Մուրատեան եղբարց վերջին մնացորդը, և եկեղեցական աշխատութեանց մէջ Արծիւեանի աջակիցը, որ կոչուեցաւ Յակոբ Պետրոս Բ (ԱՂՔ. Ա. 20): Դեկտեմբեր 22'ին կաթողիկոսօրհնէքի հանդէսը կատարուեցաւ, և ըստ այսմ Բենեդիկտոս ԺԴ պապին ալ հաղորդուեցաւ, որ 1750 սեպտեմբեր 23'ի կարդինալական ժողովին մէջ նորընտիրին պաշտօնը հաստատեց: Յովսէփ Այվազեան արքահօր եպիսկոպոս ձեռնադրուելովը, Անտոնեանք ալ նոր ընտրութիւն կատարած էին Արծիւեանի մահէն առաջ, և հայր Գրիգոր Ներսէսեանը աբբահայր հռչակուած էր (ԱՆՏ.): Յիշած ըլլալով թէ հայր Գրիգոր և հայր Պօղոս Հռոմի մէջ վանք մը հաստատելու պաշտօնով Կ-Պոլիս ուղևորած էին 1746'ին (§ 2016), աւելցնենք թէ պէտք եղած դիւրութիւնները չկրնալով ձեռք ձգել, 1748 յունիս 26'ին իրենց գրուած հրահանգին համեմատ, անմիջապէս Լիբանան դարձած էին (ԱՆՏ.):

**2035.** Երուսաղէմ ալ ունեցաւ միևնոյն 1749 տարւոյ մէջ, գլխուն ցնցող պատահարը, զի նոյն տարին հոգին յանձնեց իւր բազմամեայ պատրիարքը, և բազմերախտ հայրապետը, որ 32 տարիէ իվեր անոր պետն ու հայրն էր եղած, Սաղիմական աթոռը իւր կործանմանէն վերականգնած, և անոր փայլն ու պայծառութիւնը, առացութիւնները և արտօնութիւնները պաշտպանած և ընդարձակած:

ՇՂԹԱՅԱԿԻՐԻ ՄԱՀԸ

Դրժբախտաբար մահուան ամսաթիւը տեղ մը նշանակուած չենք գտներ, բայց յիշատակը անմոռաց է Երուսաղէմի մէջ, ինչպէս և վայել էր ընել, և հանապազօրեայ պատարագին մէջ երբ յիշատակութիւն կ'ըլլայ հանգուցեալ բաքռանդեղոյն ձերոյ (ԺԱՄ. 593), յանուանէ կը յիշուին Երուսաղէմը փրկանաւորող և փառաւորող Պարոնտէր և Շղթայակիր զոյգ Գրիգորները: Յաջորդութեան մասին Շղթայակիրի կամքն էր եղած իրմէ ետքը աթոռը յանձնել Թէոդորոս Խորենացի եպիսկոպոսին (§ 1997), զոր փոխանորդ ալ ըրած էր կանուխէն, և Կ-Պոլսոյ պատրիարքութեան ալ ծանուցած, և Նալեան պատրիարք ալ հաստատած էր մակագրելով, թէ ինչ Յակոբ գործակալին ընդունելի է (ԱՍՏ. Բ. 77): Այսպէս համոզուած էր ամբողջ միաբանութիւնն ալ, և ըստ այսմ հաստատութեան կը սպասէր: Բայց խնդիրը հիմնովին այլափոխուեցաւ Կ-Պոլսոյ պատրիարքարանին մէջ: Մինաս պատրիարք և մեծամեծներ Շղթայակիրին յաջորդելու արժանաւոր, կարող և զօրաւոր անձի մը անհրաժեշտութիւնը տեսնելով, մտածեցին այդ պաշտօնին կոչել Յակոբ Նալեան պատրիարքը, որ քիչ առաջ Կ-Պոլիսը թողած և Պրուսա էր գացած (§ 2029): Թէոդորոս բաւականին ծանօթ չէր, ուստի համաձայնեցան Նալեանը Երուսաղէմի պատրիարք ընտրել, իրեն հաւանութիւնն ալ առին, և ըստ այնմ հրովարտակը հանել տուին, և Երուսաղէմ ուղևորեցին ամենայն փառաւորութեամբ, և միաբաններն ալ ընդունեցան ամենայն յօժարութեամբ, զի բախտ մըն էր իրենց՝ Նալեանի կարողութեամբ անձ մը իրենց գլուխ ունենալ: Նալեանի Պրուսայի առաջնորդութիւն վարելը, հազիւ թէ քանի մը ամիս տևողութիւն ունեցած կրնայ ըլլալ: Այստեղ պէտք է դիտել տանք թէ Նալեան Երուսաղէմի միաբան չէր, այլ իբր Կոլոտի աշակերտ Ամրտոլու կամ Գլակայ միաբան կրնար սեպուիլ, և ոչ երբեք Երուսաղէմի, թէև զամենայն զէջս և զմուտս սրբոյն Երուսաղէմայ իմացեալ, և յամենայն գործս սրբոյ Երուսաղէմի ձեռնհասեալ էր: Արդ եթէ է սուրբ Երուսաղէմ անհոգ չեղող, և էջմիածնայ սպասող անձր (ՀՆՆ. 157), պարզապէս իբր միաբան չե-

զող պիտի իմանայինք, պէտք էր ըսել, որ Կարապետ կաթողիկոսէ արտասանուած նզովքին զօրութեամբ, Մինաս պատրիարք և Կ-Պոլսոյ մեծամեծներ, և Երուսաղէմի միաբանութիւնը՝ նզովքի ներքեւ ինկած պիտի ըսուէին, և գլխաւորապէս ինքն Նալեան ալ, որ Երուսաղէմի կանոններուն կազմուելուն և հռչակուելուն գործակից էր։ Այս պարագան ալ մեզի իբր փաստ կը ծառայէ, թէ Հաննայի կոչուած նզովքները չէին արգելեր միաբան չեղողի մը Երուսաղէմի պատրիարք ընտրուիլը, բաւական է որ արժանաւորութեան պայմաններուն համապատասխանէ (§ 1950), իբր զի ամէնէն առաջ Նալեան լաւ տեղեակ պէտք էր ըլլար կանոններուն հարազատ իմաստին։

**ՋԱՀԿԵՑԻԻ ՄԱՀԸ**

**2034**. Զանազան կողմեր կատարուած իրողութիւնները քաղելէ ետքը, նորէն դառնանք Մայրաթոռ, ուր 1747 փետրուարին վերահաստատուած տեսանք Ղազար Ջահկեցին (§2028)։ Ղազար վերջնական յաղթութիւնը տանելէն ետքը, իւր բոլոր քինախնդրութիւնը Թիւթիւրի վրայ ամփոփելով, ուրիշները հանդարտ թողած կ'երեւի, զի նոր հալածանքներ և հարստահարութիւններ չեն յիշուիր այլեւս։ Իբր գործունէութեան արդիւնք ունինք Ղազարապատը, որ այդ վերջին միջոցին մէջ շինուած և լրացած է 1750'ին (ՇԱՀ. Ա. 91), մինչ վեհարանը՝ այն ատեն Պատրիարքարան կոչուած, 1741'ին, իւր կաթողիկոսութեան առաջին մասին մէջ լրացած էր (ՇԱՀ. Ա. 92)։ Կիրքն ալ, դայրոյթն ալ, որչափ սաստիկ և բուռն ըլլան, հետզհետէ կը մեղմանան տարիքի բերմամբ։ Ըստ այսմ Ջահկեցին ալ հանդարտութեամբ անցուց իւր վերջին օրերը, և խաղաղութեամբ կնքեց իւր ալեկոծ և տագնապալից կեանքը 1751'ին, ամսաթիւը անորոշ, բայց մերձաւոր հաշուով տարւոյն սկիզբները, վասնզի յաջորդը՝ ընտրական գործողութիւններ աւարտելէն և Կ-Պոլսէ Էջմիածին դալէն ետքը, նոյն 1751 տարւոյ սեպտեմբերին մայրտաճարին մէջ օծումը կ'ընդունէր։ Ղազարի գերեզմանը կը տեսնուի Ս. Գայիանէի վկայարանին բակին աջակողմը։ Բաւական խօսած կը գտնուինք Ջահկեցիին անձնաւորութեան նկատմամբ, և իրեն գործողութեանց վրայ գնահատումներ ալ ըրած, այնպէս որ պէտք չենք զգար նոյն կէտերու վրայ անդրադառնալ։ Բոլոր կեանքին ընթացքին մէջ յայտնի կը տեսնուին անոր վրայ կարողութեան գովելի ձիրքեր, յաջողակութեան համար արթուն միտք, և ձեռնարկներու մէջ տոկուն ջանք. սակայն դժբախտաբար ամենայն ինչ չափազանց էր անոր վրայ, և բուռն կիրքերով չաղախուած էին անոր լաւ յատկութիւններն ալ։ Արժանապատուութեան զգացումը մինչեւ սնափառութիւն մղուած, անձնապաշտպանութիւնը մինչեւ անգթութիւն հասած, ջանքը մինչեւ բռնութիւն, և համարձակութիւնը մինչեւ ապօրինութիւն յառաջացած։ Եթէ գիտցած ըլլար իւր ձիրքերը՝ կիրքերէ զերծ պահելով արդիւնաւորել, անշուշտ աւելի հանդարտ ու երջանիկ, և տագնապներէ տառապանքներէ զերծ կեանք վարած կ'ըլլար, և իւր անունը լաւագոյն կաթողիկոսներուն հետ կը դասուէր. մինչ այժմ իւր անտեղի գործերն են որ լաւ և ընտիր կողմերն ալ կը քօղարկեն և կ'աղաւաղեն, և իւր անունը փառաւոր յիշատակէ կը զրկեն։

# Տ. ՄԻՆԱՍ Ա. ԱԿՆԵՑԻ

**2035.** *Մինասը յիշեցինք երբ Նալեանի տեղ Կ-Պոլսոյ պատրիարքութեան կոչուեցաւ* (§ 2029), *և անկէ առաջ*

ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐ

*Մշոյ Ս. Կարապետի առաջնորդ եղած ըլլալը գիտենք, բայց աւելի կանուխ նախընթացին ինչ ըլլալը չենք գիտեր։ Նկատելով որ բաւական ծեր կը ներկայանայ բարձր աթոռներ ելած ատենը, անհաւանական չէր ըլլար նոյն իսկ Աբրահամ Խոշաբեցիի յաջորդ եղած կարծել Գլակի մէջ, երբոր նա 1730'ին կաթողիկոս կ'ընտրուէր* (§ 1965), *որով սա ալ Ամրտոլցի Վարդանի կրտսերագոյն աշակերտներէն եղած կ'ըլլայ։ Մինաս* 1749 *տարուընէն մինչև* 1751 *տարուն երկու տարի պատրիարքութիւն վարած էր, առանց չփոթի մը տեղի տալու, թէպէտև առանց յատուկ և նշանաւոր արդիւնաւորութեան մըն ալ ցուցնելու, որ եթէ մեծ գործունէութեան նշան չէ, խոհական և կանոնաւոր անձնաւորութեան նկարագիրը կը ցուցնէ։ Այդ համբաւը հարկաւ յորդորեց Էջմիածնի միաբանները որ Կ-Պոլսոյ պատրիարքը իրենց կաթողիկոս ուզեն, և Տաճկահայեր ալ չուզեցին համաձայնած են իրենց ճանչցած խոհական անձ մը Մայրաթոռին վրայ տեսնել, որ կարող էր դարմանել և բուժել այն պառակտումները ու թշնամութիւնները, զորս ցանած և աճեցուցած էր Ջահկեցիին բուռն և կրքոտ վարչութիւնը։ Նկատելի է որ վերջին կաթողիկոսներ, Էջմիածնին Օսմանեանց տէրութեան ներքև կենալէն իվեր, Տաճկահայութեան կողմէ կ'առնուէին, թէպէտև Էջմիածին և Երևանի նահանգը Պարսից իշխանութեան ներքև անցած էին։ Սոր ներքին պատճառը պէտք է տեսնել Պարսկահայոց ինկած և նուաղած վիճակին մէջ, որ եթէ առաջ իբրև ազդեցիկ տարր իրենց հաճութեամբ կը տնօրինէին Մայրաթոռի բախտը և Ջուղայեցիներ կը բարձրացնէին հայրապետական աթոռին վրայ, այլևս ոչ իրենց ազդեցութիւնն էր մնացած, և ոչ արժանաւոր եկեղեցականներ կը հանէին Նոր-Ջուղայի վանքէն, կամ Էջմիածնի Ջուղայեցի միաբաններէն։ Եւ ոչ միայն Տաճկահայեր էին որ Մայրաթոռին ընտրելիներ կու տային, այլև Պարսից կառավարութենէ աւելի Օսմանեան կառավարութեան պաշտպանութիւնը կը յարգուէր, և անոր հրովարտակն էր որ Էջմիածնի գահակալին զօրութիւն և ազդեցութիւն կը պատրաստէր։ Մանաւանդ Ջահկեցիին մահուան թուականին՝ Պարսկաստան կատարեալ անիշխանութեան մէջ էր։* Բարեաւ խաղաղ, *կը գրէ Երևանեցին,* Բագրատունեան Պարսից, և երկիր մարդկանց ի յետոյ խնամոց և անդորրութեան Բարեյանց (ՋԱՄ. 32)։ *Մինաս պատրիարք՝* Համաձայնութեամբ միաբանից Էջմիածնի և Կոստանդնուպօլսեցւոց ընտրեալ կաթողիկոս, *Օսմանեան կառավարութենէ ալ հրովարտակը ստանալով փութաց Էջմիածին երթալ* (ՇԱՀ. Ա. 229), *և կաթողիկոսական օծումը ստացաւ* 1751 *սեպտեմբեր* 15'*ին, Խաչվերացի օրը* (ՋԱՄ. Գ. 864)։

**2036.** *Երբոր Մինաս՝ կաթողիկոսութիւնը հաստատուելով պատրիարքութենէ*

Կ-ՊՈԼՍՈՅ ԱԹՈՌԸ

*ձեռք քաշեց, ջանաց առջև անցընել իր իսկ փոխանորդը, Գէորգ Ղափանցի վարդապետը, և դժուարութիւն չունեցաւ մեծամեծները հաւանեցնել, վասզի ընդհանուր համակրութիւն վաստկած էր Ղափանցին, իբր* քաղցրաբարոյ այր և մարդասէր, ողորմած և շնորհազարդ առատաձեռն (ՋԱՄ. Գ. 864)։ *Ղափանցիին* չորս ամիս հովուած, *այսինքն պաշտօնավարելէ պատրիարք նստած օրը նշանակուած է* 1751 *յունիս* 15 (ՍՐԳ.) *չաբաթ օր։ Ինքն բնիկ Սիւնեաց նահանգէն և Պարսկահայ երկիրներէն ըլլալով, Էջմիածնի միաբան պէտք է ըլլայ, և Էջմիածնի չատ միաբաններու նման նուիրակութեամբ եկած։ Ցատկապէս Գաղատիոյ շրջանակին մէջ աշխատած էր, և Կ-Պոլիս անցնելով իւր համեստ ընթացքովը պատրիարքին և ժողովրդեան համակրութիւնը*

գրուած էր։ Եթէ Ղափանցին այդ կողմէ հաճելի եղաւ, բայց իբր գործունէութիւն մեծ արդիւնք ունեցած պիտի չըլլայ, որ մեծամեծներ աւելի կարող և աւելի յաջողակ անձի մը պէտքը զգացին, և Կոլոտի ու Նալեանի յիշատակները ամէնուն բերանը կը կրկնուէին։ Կարող պատրիարք մը ունենալու պատճառներուն կարգին կը յիշուի նաև, թէ թօրածէլ օլսա տըշնտա ինչ անլաշըլամաճըն (ՍՐԳ.), առանց աւելի բացատրութեան, և թերևս բողոքականութեան ակնարկուի այս խօսքով։ Ժամանակին մեծամեծներուն աւելի ազդեցիկն էր Եաղուպ ամիրա, արքունի վաճառապետ, որ է դուզէրէնտուզը, իւր հայկական անունով Յակոբ Յովհաննէսեան Ակնեցի, որ 1751՚ին Երուսաղէմ ուխտի կ՚երթայ իւր կնոջ Սողոմէի հետ, թանկագին ընծաներ կը տանի և Ս. Յարութեան տաճարին վերնատունը նորոգել կու տայ։ Նալեանի նախածանօթ ըլլալով արտասովոր կերպով կը պատուասիրուի Եաղուպ, և այն տեղ կը համաձայնին որ Նալեան նորէն Կ-Պոլսոյ պատրիարքութեան դառնայ։ Եաղուպ իւր վրան կ՚առնէ գայն իրականացնելու հոգը, և Երուսաղէմէ դառնալուն Նալեանը իրեն հետ միատեղ Կ-Պոլիս կը բերէ։ Եաղուպ ուխտաւորութեան համար Երուսաղէմ գացած ըլլալով, ժամանակին սովորութեան համաձայն 1751՚ին վերջերը աւագ տօներէն առաջ գացած կ՚ըլլայ, և դարձած՝ զատիկը ընելէն ետքը, որ այն տարի 1752 մարտ 29՚ին կը հանդիպէր։ Եաղուպ Կ-Պոլիս հասնելուն կը հաղորդէ իւր որոշումը, և Ղափանցիին հրաման կ՚ընէ աթոռէն հրաժարիլ, որ անհակառակ կը համակերպի, փոխարէն Պրուսայի առաջնորդութիւնը ընդունելով (ՁԱՄ. Գ. 864)։ Ըստ այսմ 1752՝ մայիս 16՚ին տեղի կ՚ունենայ Նալեանի երկրորդ անգամ պատրիարքական աթոռ ելլելը (01 ՕՐԱ. 141)։ Իսկ Եաղուպ ամիրա այս եղելութեան վրայ շատ չապրիր, զի քիչ ետքը 1752 յուլիս 9՚ին (ՍՐԳ.), Վարդավառի հինգշաբթին, արքունական հրամանով կը գըլխատուի։ Ոմանք նահատակութեան գոյն տուած են Եաղուպի գլխապարտութեան, այլ մեզ հաւանականագոյն կ՚երևի արկածին մեկնութիւնը տեսնել նեղքինապետ Պէքիրի անկումին մէջ, որ իբր հեղինակ բազմաթիւ զեղծումներու և ոճիրներու՝ ամբաստանուեցաւ դիմպետէն ժողովրդական գանգատներու հետևանօք, և գլխատուեցաւ։ Նոյն պատիժին ենթարկուած կ՚ըսուին իւր երկու մեղսակիցները, որոնք Սիւլէյման նեղքինի և Հայ Յակոբ անունով կը յիշուին։ Անոնց կողոպուտը 45 միլիոն հնչուն դահեկան եղած կ՚ըլլայ, առանց հաշուելու ոսկեղէն և գոհարեղէն զարդերը (ԺՈՒ. 343)։

**2037**. Նալեան իբր երկու տարի ու կէս մնացած էր Երուսաղէմի պատրիարքութեան վրայ։ Այդ միջոցին հոգ տարաւ Երուսաղէմի, Բեթղեհէմի, Ռէմլէի, Յոպպէի, Դամասկոսի, Եգիպտոսի և Բերիայի կալուածներուն նորոգութեան, պէտք եղած հովարտակները ստանալով (ԱՍՏ. Բ. 78)։

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱԹՈՌ

Անհէտ Տէճէնէ անուն չէյխի մը դէմ գերեզմանատան ստացութեան դատը և ազգային իրաւունքը պաշտպանեց. միւս քրիստոնեաններու ալ օգնեց, և վանքը հարստացուց Եաղուպի բազմաթիւ և թանկագին ընծաներով, որոց ցուցակը տուած է Երուսաղէմի նոր պատմագիրը (ԱՍՏ. Բ. 79)։ Երբ Նալեան կը հեռանար, այլևս արգելք մը չկար, որ Թէոդորոս Խորենացին պատրիարքական աթոռ բարձրանար, Շղթայակիրի կամքին համեմատ։ Ուստի Նալեան, իւր պատրիարքութեան հաստատուելէն ետքը, կառավարութեան առաջարկից կամովին հրաժարիլը, և Թէոդորոսի իրեն յաջորդելը, և այսպէս Թէոդորոս Խորենացի 1752՚ին պետական հաստատութեամբ Երուսաղէմի պատրիարք հռչակուեցաւ։ Թէոդորոսի գործունէութեան նախընծայ արդիւնք եղաւ Կանոնական Քանոն մակագրութեամբ կարգադրութեան մը յօրինումը՝ է Քուրսո կասամվորաբիլան օլմայըն, որուն առաջին ծրագիրը էչմիածնաւորէ ազէն կազմեցին Նալեանի գլխաւորութեամբ, և Թէոդորոսի տատէբէյին, որուն վրայ Նորընտիր պատրիարքն ալ յանել ինչ ինչ, և Կ-Պոլիս հաղորդեց։ Ասոր վրայ Յակոբ պատրիարք և գլխաւորք ազգին տուրախոյան յոյժ, և հաւանութիւննին տուին (ԱՍՏ. Բ. 81)։ Այս առաջին յիշատակութիւնն է Երուսաղէմի համար Կ-Պոլսէ տրուած կանոնագիրի մը, և շատ հետաքրքրական գրուած պիտի ըլլար, եթէ պատ-

ճէնը պահուած և մուլի ծանօթացած ըլլար ։

**2038.** Թէպէտ մթին, բայց դիտողութեան արժանի պարագայ մը կը գտնենք պատմուած Նոր-Ջուղայի

ԱՍՊԱՀԱՆԻ ԱԹՈՌ

առաջնորդութեան վրայ, որուն կոչուած էր Պօղոս Ջուղայեցի, Աստուածատուր Ֆահրապատցիին յաջորդելով (§ 2019)։ Պօղոսի մասին կը գրուի, թէ սկիզբները առանց խռովութեան պաշտօն վարեց, բայց 1752'ին, յամն ութերորդէ իւր պաշտօնին՝ պարտաւորուեցաւ հրաժարել, յաղագս անյայտական դատապարտելի գործոց ինչ (ՏՑՈ. Ա. 59), որ ճշդուած չէ։ Իսկ ուրիշ տեղ ալ գրուած է, թէ ընկեցիկ լինի ի պատճառս անօրէնոյն գնացից (ԽՉԿ. 10)։ Նախ տարեթիւին մասին դիտելի է որ եթէ 1752'ին ութերորդ տարին էր, անոր ընտրութիւնը 1748'ին եղած կ'ըլլայ, և նախորդը 1745'ին վախճանած լինելով (§ 2020), երեք տարի աթոռը տեղակալով կառավարուած պիտի ըսենք։ Իսկ դատապարտելի գործ կամ անօրէնոյն գնալ, մտածել կու տայ որևէ անառակութեան կամ շնութեան մէջ բռնուած ըլլալուն։ Վանքին եպիսկոպոսները, Պետրոս, Խաչատուր, Մովսէս և Զաքարիա, քննութեան և դատաստանի կը նստին, և Ջուղայեցւոց թուականին 137 նախա 12'ին, կամ 1752 յունիս 30'ին, վճիռ կ'արձակեն, առաջնորդին վրայ կորզեն զողոշխարանս, արտաքին ստեանն ալ գործին կը միջամտէ և հազար թուման տուգանքի կ'ենթարկէ։ Պօղոս վանքէն կ'ելլէ և բնակի ի տան իւրում։ Այստեղ կատարեալ զղջմամբ և խոստովանութեամբ ապաշխարէ մինչև իւր կենաց վերջը, և մերձ ի վախճան կենաց արձակում կը ստանայ, և նորէն շնորհի նմա պատիւ եպիսկոպոսական աստիճանին (ՏՑՈ. Ա. 57)։ Պատահարը թէպէտ մանաւոր և մարդկային, սակայն մեզի համար կարևորութիւն ունի նկատել, որ վանական միաբանութիւնը, որուն 5 եպիսկոպոս, 5 վարդապետ, և 10 այրի քահանայ ունենալը ըսուած է (ՏՑՈ. Ա. 60), իւր առաջնորդը կը դատէ ու կը դատապարտէ, աստիճանէն կը զրկէ և ապաշխարութեան կ'ենթարկէ, և առաջնորդը ամենայն հլութեամբ կը հնազանդի։ Կաթողիկոսի անունը չյորուիր, և այս լռութիւնը հնար է վերագրել ժամանակին Պարսկաստանի մէջ տիրող շփոթութեանց։ Բայց անհաւանական չէ ըսել, թէ կաթողիկոսական միջամտութեան պէտքն ալ զգացուած չէ, և միաբանութիւնը իւր իրաւասութեամբ գործած է։ Պօղոսի պաշտօնանկութենէ ետքը վանքին և վիճակին կառավարութիւնը կը ստանձնէ Զաքարիա եպիսկոպոս Տփղիսեցի, իբրև առաջնորդ (ԽԱՉ. 285), թէպէտ ոմանք տեղ մը յաջորդ կոչուելէն, լոկ տեղակալ, և ոչ առաջնորդ ըլլալը կը հետեւցնեն (ՏՑՈ. Ա. 60), այլ ուրիշներ ուղղակի առաջնորդաց շարքին կ'անցընեն Զաքարիայի անունը (ԽՉԿ. 10)։ Երկու տարի ետքը 1754'ին առաջնորդ ընտրուած է Գէորգ Ջուղայեցի (ՏՑՈ. Ա. 61), զի Զաքարիա ալ իւր նախորդին համահաւանէն ըլլալուն պատճառաւ ըմպէ զբաժակ անկման (ԽՉԿ. 10), և նոյն պատժոյն կ'ենթարկուի, որուն ինքն իւր նախորդը ենթարկած էր։

**2039.** Մինաս կաթողիկոսի մահը վաղահաս եղաւ, զի և ոչ իսկ երկու տարին կրցաւ լրացնել աթոռին

ՄԻՆԱՍԻ ՄԱՀԸ

վրայ. օծուած էր 1751 սեպտեմբեր 15'ին, և վախճանեցաւ 1753 մայիս 12'ին (ՇԱՀ. Ա. 229)։ Պատճառը անշուշտ ծերութեան տարիքն է։ Միևնոյն ծերութիւնը պատճառ եղած պիտի ըլլայ, որ իւր գործունէութենէն բնաւ յիշատակութիւն չունինք, և առնէ զգրեանս պատմագրականս հօրացեալ՝ բացատրութեամբ կը լրացնէ Երևանեցին անոր կենսագրականը (ՋԱՄ. 32)։ Բայց ասկէ զատ իրեն արդիւնք և գովութիւն պէտք է սեպուի Էջմիածինի մէջ հաշտութիւն և հանդարտութիւն մնալը, և հակառակութեանց ու թշնամութեանց վերջ տալը։ Մարմինը թաղուած է Ս. Գայիանէի վկայարանին բակին ձախակողմը (ՇԱՀ. Ա. 229)։

# Տ. ԱՂԵՔՍԱՆԴՐ Բ. ԲԻՒԶԱՆԴԱՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ՊԱՐԱԳԱՆԵՐԸ**

**2040.** *Էջմիածինի միաբանութիւնը Մինասի յաջորդին ընտրութեան համար հաւաքուելով, միևնոյն ոճին հետեւեցաւ, զոր նախընթաց պարագաներու մէջ ալ պահած էր, այսինքն է, Տաճկահայոց մէջ ամէնէն աչքառու դէմքը Մայրաթոռին վրայ բազմեցնել, և անոր փորձառութեամբ ու ազդեցութեամբ հայրապետութիւնը բարձրացնել։ Այդ տեսութեամբ ընտրութիւնը չատ դիւրին էր, և Յակոբ Նալեան պատրիարք անհակառակ կաթողիկոսութեան ընտրելին ընդունուեցաւ, և Տաճկահայոց համաձայնութիւնն ալ ստանալու, և պաշտօնական գործողութիւնները լրացնելու, և ինարկին պատչաճը կարգադրելու համար՝ պատգամաւորութիւն մը կազմուեցաւ, որ 1753 գարնան մէջ հասած կ'ըլլայ Կ-Պոլիս։ Նալեան ոչ մէկ կերպով յանձնառու եղաւ Կ-Պոլսոյ աթոռը թողուլ, որ իրեն իբրև ժառանգութիւն մնացած էր Կոլոտէն, և ուսկից միջոց մը հեռու մնալէ ետև, նորէն ձեռք անցուցած էր։ Մայրաթոռի հայրապետութիւնն ալ զինքն չհրապուրեց. և ստուգիւ ալ յաջող և փառաւոր կացութիւն մը չունէր Էջմիածին, երբ խռովութիւններ կը տիրէին Պարսկաստան, և ճիշդ այդ միջոցին էր որ Ալիմէրտան Լոռխտանի իշխան՝ Սպահանը կը գրաւէր, երբ Շահռուհ ալ կը չարունակէր թագաւորել Մէշէթի մէջ* (ԽԱՋ. 282)։ *Երբոր Նալեան քաշուեցաւ, յառաջ եկող անուններն էին Աղեքսանդր Բարաքաշը և Սահակ Ահագինը, պահ մը Գէորգ Ղափանցիի վրայ ալ խօսուեցաւ, բայց Կոստանդնուպոլսոյ մեծամեծներուն և ժողովներուն առջև աւելի Ահագինը եղաւ որ խօսեցաւ և յորդորեց, և 1753 յունիս 22'ի ժողովին մէջ բանադատեց Բարաքաշը յանձնառու ըլլալ կաթողիկոսութեան, և բոլոր ժողովականք միաբան և միակամ զայն կաթողիկոս ընդունեցան* (ԴԻԻ. Գ. Է)։ *Աղեքսանդր Բարաքաշը առիթ ունեցանք յիշել, անդստին Կրետացիին օրէն իբրև անոր փոխանորդը* (§ 1973), *և յետոյ Ջահկեցիին օրով իբրև Բիւթիւրի ընկերակիցը նեղութեանց և խոշտանգանաց մէջ* (§ 2023), *որ վերջէն այլևս չյիշուելուն մէկ կողմ քաշուած պիտի ըլլայ՝ ըսինք* (§ 2024), *և այս անգամ զինքը կը գտնանք Կ-Պոլսոյ մէջ առանձնական կեանք վարող։ Ձենք գիտեր թէ Ջահկեցիին ձեռքէն խոյս տալով անմիջապէս Կ-Պոլիս եկած է, թէ ոչ ուրիշ տեղեր ալ եղած է, բայց ինչ ալ ըլլայ, վերջապէս Կ-Պոլիս իւր ծննդավայրը քաշուած է ծերութեան օրերը հանդարտ անցընելու համար։ Շատ տեղ Կոստանդնուպոլսեցի մակդիր անունով յիշուած է* (ՋԱՄ. 32), *բայց մենք նախադասեցինք Բիւզանդացի կոչել, հետեւելով իւր գերեզմանին մակագրութեան մէջ գործածուած յորջորջումին* (ՇԱՀ. Ա. 230)։ *Իսկ Բարաքաշ մականունը որով յիշուած է ստէպ, հաւանականօրէն իրեն տրուած է սև և թաւ յօնքեր ունենալուն համար, թէպէտև կարծողներ ալ կան թէ գերդաստանի ազգանունն է, և Կ-Պոլսոյ մէջ բանասէր Կարապետ Բարաքաշեանի ընտանիքն ալ, այժմ հռոմէադաւան, իւր ցեղէն կարծած է Աղեքսանդր կաթողիկոսը։*

**ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ՄԱՀԸ**

**2041.** *Ինչպէս նախընթացներն ալ կը ցուցնեն, ծերութեան տարիքն ունէր Աղեքսանդր, երբ հակառակ իւր մերժելուն և դիմադրելուն ստիպուեցաւ կաթողիկոսական պաշտօնը ստանձնել, և Մայրաթոռին համար աշխատիլ, որուն* ի մանկութենէ զբարեբարոյութեան բազում *ըրած էր, գոլով* որդի և բնիկ քա- քին որբոյ ամենայն։ *Ինքն կը ներկայացուի իբր* այր հեզաբարոյ և պարզամիտ և բազմաշխատ (ՋԱՄ. 32), *և եթէ տարիքին պատճառաւ հնար չէր իրմէ երկարատև և բազմարդիւն պաշտօնավարութիւն սպասել, գոնէ կաթողիկոսական աստիճանը արդար վարձատրութիւնն էր իւր նախկին արդիւնաւորութեանց, և կրած տառապանաց ու տանջա-*

նաց, և համեստ երկայնամտութեան՝ հակառակ Թիւթիւրի արկածախնդիր գործունէութեան։ Աղեքսանդր ընտրութեան համակերպելէ ետքը անմիջապէս Կ-Պոլսէն մեկնած չէ, թերևս անձնական մի արգելքով, վասն զի առանց ձմեռուան խստութեան նայելու 1753 հոկտեմբեր 14'ին մեկնած է Կ-Պոլիսէ, և թողեալ պատրիարքն ճանապարհէ, և ցամաքի ճանպով հասած է Էջմիածին 1754 մարտ 2'ին (ԴԻԻ. Գ. Է.)։ Ուղեկիցներ համդիպած ատեն հաստատած է Յարութիւն Բասենցի եպիսկոպոսին առաջնորդութիւնը։ Էջմիածին համնելէն քիչ օր ետքը օծուած է 1754 մարտ 6'ին (ՋԱՄ. Գ. 865), ինչպէս կը գրեն ամէնքը (ՇԱՀ. Ա. 229), որ կը համդիպի Տնտեսի կիրակիին։ Ըստ այսմ իւր յիշատակարանին մէջ մարտի ամսեանն ե.ին աւուրն գրուած ըլլալը, շփոթութիւն սեպելու է, զի ինքն ալ կը յիշէ, թէ յաւուր Տնտեսի կիւրակէին օծեցին, որով եղաւ տնտե- ողջին Արարչեան (ԴԻԻ. Գ. Է.)։ Տարիուկէս ապրեցաւ Աղեքսանդր աթոռին վրայ, և կեանքը կնքեց միւս տարին, 1755'ին Հրեշտակապետաց շաբաթ օրը, որ կ'իյնար նոյեմբեր 11'ին (ՇԱՀ. Ա. 230), և թաղուեցաւ Մայրտաճարին դրան մօտ, զանգակատան ներքև, հարաւակողմը, որուն համդիպակաց հիւսիսակողմը թաղուած էր Աղեքսանդր Ա Ջուղայեցի, որ 41 տարի առաջ նոյն ամսուան մէջ վախճանած էր նոյեմբեր 22'ին (ՇԱՀ. Ա. 224)։ Անցողակի յիշեմ, թէ 1888 մայիսին, երբոր Էջմիածինի ներքին բակին յատակը ցածցնելու պեղումներ կը կատարուէին, Աղեքսանդրներու գերեզմաններն ալ աւելի խոր իջեցնելու պէտք տեսնուեցաւ, և Մակար կաթողիկոսի հրամանով, և Ներսէս Խուդավերդեան ու Մամբրէ Սանասարեան եպիսկոպոսներու հետ՝ ես ալ անձամբ աշխատեցայ անոնց ոսկորներուն օրինաւոր զետեղման և շիրիմներուն կանոնաւորապէս փակուելուն։ Աղեքսանդր Բիւզանդացիին գործունէութեան գալով՝ գլխաւոր դիպուած կամ նշանաւոր շինուած մը չունինք յիշատակուած, և Երևանեցին ալ կը բաւականանայ ըսելով, թէ տունն և գրեանս հոգացեալ է յօգուտ որբոց աղքատաց (ՋԱՄ. 32)։ Միջադէպ մը չպատմուիլը, իւր օրերուն Մայրաթոռի մէջ խաղաղութիւն տիրելուն նշան պիտի ընդունուի, և իրեն համար ալ, խոհական վարչութեան փաստ պիտի նկատենք այդ պարագան, ինչպէս իւր նախորդ Մինասին համար ալ ըսինք (§ 2039)։ Դժբախտաբար տարիքնին առած ծերունիներ սկսած էին դրաւել Մայրաթոռը, որոնք ոչ երկարատև պաշտօնավարութիւն կ'ունենային, և ոչ ժիր գործունէութիւն կը խոստանային։ Աղեքսանդրի կանոնաւոր վարչութեան նշան պէտք է սեպել, օծուելէն քիչ ետքը, 1754 ապրիլ 5'ին, որ զատկին երրորդ օրուան կը համդիպի, յատուկ տոմար մը հաստատելը՝ հասոյթներն ու ծախքերը գրելու, որ և ցարդ կը պահուի՝ իբրև առաջին նմոյշ Մայրաթոռի կանոնաւոր հաշուակալութեան (ԴԻԻ. Գ. Է.)։

**ՆՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ**

**2042**. Աղեքսանդրի մահուանէ ետքն ալ Մայրաթոռի միաբանութիւնը կրկնեց իւր առաջին փափաքը, հայրապետական աթոռի վրայ տեսնել Յակոբ Նալեան պատրիարքը, թէ՛ կարողութեամբը և թէ՛ արդիւնաւորութեամբը յայտնի, և միանգամայն տակաւին 54 տարեկան, ժիր գործունէութեան տարիքին մէջ։ Այդ փափաքին իրականացման համար Կ-Պոլիս յղուած պատգամաւորութեան գլխաւորն էր Սիմէոն եպիսկոպոս Երևանեցին։ Միաբանութիւնն աչքը Նալեանի վրայ էր դրած, բայց եթէ նա նորէն մերժէր, երկրորդ ընտրելի ցուցուցած էին Սահակ Ահագինը, միշտ նոյն տեսութեամբ, Տաճկահայերէն աւելի աչքառու անձը բերելու համար։ Սիմէոն Կ-Պոլիս հասաւ 1756'ին սկիզբները, և Նալեան միևնոյն վերջնական և վճռական մերժումը՝ դիմադրեց, և ոչ մի կերպով յանձն չառաւ Կ-Պոլսոյ պատրիարքութիւնը Մայրաթոռոյ կաթողիկոսութեան հետ փոխանակել։ Կ-Պոլսեցիք ալ շատ վրայ տուած չեն երևնար, Նալեանի պէս պատրիարք մը ձեռքէ հանած չըլլալու համար։ Պատրիարքը մեծամեծներու ժողովը հաւաքեց, որոնք կաթողիկոսութեան արժանաւոր նկատեցին Սահակ Ահագինը, համաձայն Մայրաթոռոյ միաբանութեան որոշման, և 1756 փետրուարին կաթողիկոս հռչակուեցաւ (ՇԱՀ. Ա. 229),

թէպէտ Սահակ, որ ուրիշ անգամներ ալ հրաժարած էր, այս անգամ ալ ոչ մի յօժարութիւն չէր ցուցներ, և ակամայ կամօք հաւանութեան բռնադատուեցաւ։ Թերևս Սահակը համոզելու տխրօղական պատճառներուն կարգին, նկատի առնուեցան Սիմէոն Երևանեցիին և Զմիւռնիոյ առաջնորդ Աբրահամ Աստապատցիին ձեռքի տակէն հանած դժուարութիւնները, որոնք մեծ համակրութիւն չէին գտած մայրաքաղաքին Հայութեան մէջ։ Այսպէս թէ այնպէս Սահակ վերջնապէս կաթողիկոս ճանչցուեցաւ, բայց այսմ ալ Էջմիածին ծանուցուեցաւ, ուր իրր տեղակալ գործի գլուխ կը մնար Շամախեցի Յակոբ եպիսկոպոսը, զոր յիշեցինք իբրև Ջահկեցիէն հալածուած անձերէն մին (§ 2024)։

**2043.** Սահակ, բնիկ Խորձենացի կամ Կեղեցի, Կոլոտի յառաջադէմ աշակերտներէն էր, ցուցակին մէջ հինգերորդ նշանակուած, Նալեանէն անմիջապէս ետքը և Ահագին մականուն ստացած ուժեղ ձայնին համար, «ասկս ահագնա-ձայն և ֆողոբորբոք ժողովրդեան զՏէրն կենաց» (ՄՐԳ.)։ Բայց տեսլեամբ և կազմով ալ ահագին եղած պիտի ըլլայ, զի Պետրոս Տէր-Յովհաննէսեան Կարնեցի քահանան, որ Կարնոյ Ս. Լուսաւորիչ վանքին նորոգութեան առթիւ, Սահակի գերեզմանը բանալու առիթ ունեցած էր, ինձ բերանացի վկայած է թէ սովորականէն մեծ են եղած անոր ոսկրները։ Սահակի գործունէութենէն ինչ ինչ յիշուեցաւ պատմութեանս կարգին, և գլխաւորապէս Ջահկեցին տապալելու համար Կ-Պոլսէ պատուիրակ ղրկուիլը (§ 2024)։ Էջմիածինէ երբ դառնալը յայտնի չէ, բայց 1754'ին զինքն Զմիւռնիոյ առաջնորդ կը տեսնենք (ԳԱԼ. 260), ուսկից 1755'ին Կ-Պոլիս կու գայ (ԳԱԼ. 276)։ Սահակ որ թէ Ջահկեցիին պարագային (§ 2025) և թէ Բիւզանդացիին ընտրութեան ատեն (§ 2040) խոյս տուեր էր կաթողիկոսական աթոռէն, այս անգամ ալ կարծես թէ միևնոյն միտքին վրայ կը մնար, թէպէտ պաշտօնապէս յանձնառու կ'ըլլար կաթողիկոս ճանչցուիլ։ Ճանչցուեալ կ'ըսենք, զի արդեամբ և իրօք կաթողիկոս չեղաւ Սահակ, և ոչ ալ կաթողիկոսութիւն վարեց, զի օծումն ալ չընդունեցաւ։ Այս ու այն պատճառանքներով ուղևորութիւնը ուշացուց, և տակաւին ամ մի և ամիս ինն Կ-Պոլիս մնաց (ՁԱՄ. Գ. 865), որ է ըսել թէ այնտեղ կը գտնուէր մինչև 1757 տարւոյ վերջերը, իբր ընտրեալ կաթողիկոս, և ոչ տիրապէս կաթողիկոս, ոչ ալ պաշտօնական գործունէութիւն կատարելով։ Վերջապէս ամէն կողմէ եղած դիտողութեանց վրայ, և հօրէ-ծոլէ բողոքամ ունյանց Կ-Պոլսէ մեկնեցաւ, և անշուշտ ուշտապեց, այլ քաղաքէ քաղաք հանդարտօրէն հանգիստ առնելով հասաւ Կարին, և սահմանագլուխը անցնելու դանդաղելով տեղաւորուեցաւ Կարնոյ Ս. Լուսաւորիչ վանքը՝ Մուտուրկա գիւղի բարձունքին վրայ։ Սահակի հոն հանիլը իմէալ է ըսել 1758 տարւոյ գարնան միջոցին, ուսկից այլևս չհեռացաւ. ատենը անցուց Կարնոյ Ս. Լուսաւորիչ և Հինձքի Կարմիր վանքերու մէջ տարուբերելով իւր բնակութիւնը։ Այսպէս տարիուկէս ևս այնտեղ մնաց, մինչև որ թէ Էջմիածին և թէ Կ-Պոլիս անոր յամառ դանդաղկոտութիւնը տեսնելով, որ ոչ Մայրաթոռ երթալ յանձն կ'առնէր, և ոչ պաշտօնապէս ստանձնած աստիճանէն կը հրաժարէր, ստիպուեցան երկու կեդրոններ իրարու հետ բանակցութեան մտնել, և համաձայնութիւն գոյացուցին Ահագինէ ձեռք քաշել, ըրած ընտրութիւննին չեղեալ համարել, և նոր կաթողիկոսի ընտրութիւն կատարել։ Սահակի ընտրութիւնը կատարուած էր 1756 փետրուարին, իսկ նոր ընտրութիւնը տեղի ունեցաւ 1759 օգոստոսին, որով երեքուկէս տարի աթոռոյ պարապութիւն մը տեւեց, պարզապէս Սահակի անօրինակ ընթացքին համար։

**2044.** Իրաւ ալ պատմութեան մէջ անօրինակ է, որ բարձր պաշտօնի ընտրուած անձ մը, թէպէտ դժկամակութեամբ, բայց վերջապէս պաշտօնապէս իրեն տրուած աստիճանն ու պաշտօնը յանձն առնելէն ետքը, տարիներով վրան պահէ այդ անունը, առանց անոր պայմանները լրացնելու, և առանց իսկ զայն պաշտօնապէս և վճռապէս վրայէն նետե-

**ԱՌԱՋԻՆԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ** [side heading beside §2043]

**ԵՆԹԱԴՐԵԱԼ ՀԱՐԺԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ** [side heading beside §2044]

լու. այլ անունը պահէ, գործն ալ կէսկատար կերպով կատարէ, և մանաւանդ անոր պատկանեալ հասոյթներն ալ գանձէ, առանց պաշտօնավայրը երթալու, և առանց պաշտօնին տէրը դառնալու։ Անմեկնելի հոգեբանական վիճակ մը կը տեսնուի Սահակի վրայ, և այնչափ աւելի մթին, որչափ իրեն վրայ խօսող ժամանակակիցներ որոշակի չեն բացատրեր, թէ ինչ էր Սահակի գաղտնի մտածմունքը կամ ծածուկ շարժառիթը, որով այսպիսի տարօրինակ ընթացքի մը կը հետեւէր։ Եթէ պաշտօնին պատասխանատուութեան երկիւղածութիւնն էր, վերջին անգամ ալ կրնար բացարձակապէս հրաժարիլ, ինչպէս երկու անգամ ըրած էր։ Եթէ Պարսկաստանի խառնակեալ վիճակն էր, ինքն ալ կրնար պարագայէն օգտուելով Էջմիածինի մէջ քաշուած դիրք մը ստեղծել, ինչպէս ըրած էին Մինաս և Աղեքսանդր։ Եթէ միաբաններուն հակառակութենէն կը խիթար, և գլխաւորապէս Սիմէոնի և Աբրահամի և անոնց հետեւողներուն ազդեցութենէն, կամ պէտք էր իսպառ հրաժարիլ, և կամ տեղւոյն վրայ անոնք ընկճել լիակատար իշխանութեամբ, և ոչ ինքզինքը անոնցմէ մերժուելու վտանգին ենթարկել, ինչ որ իրօք տեղի ունեցաւ։ Եթէ Սահակին նամակները գտնուէին կամ հրատարակուած ըլլային, հնար էր անոնց վրայ ուսումնասիրութիւն կատարել, բայց այդ աղբիւրն ալ չունինք ձեռուընիս։ Ջամչեան, որ ժամանակակից մըն է, տեղ մը կը յիշէ, որպէս յայտ է ի Թղթոց Նորա, Յակոբ Շամախեցիի նամակներուն ակնարկելով (ՋԱՄ. Գ. 865). բայց զանոնք ալ մենք չենք տեսած, և միայն Ջամչեանի վստահանալով չենք կրնար հաստատել, թէ Շամախեցին Անգիւնի գրած ըլլայ. Մի՛ եկեսցես այսր, իբր զի տեղական իշխանաւորներ վանքը կը նեղեն, և Եթէ եկեսցես այժմ, տեսանել ես նեղեալս զմեզ և զքեզ (ՋԱՄ. Գ. 865)։ Ասիկա միտքերը գոհացնող մեկնութիւն մը չէ, մանաւանդ թէ պէտք էր որ Սահակ յորդորուէր, տեղւոյն վրայ հնարաւոր դարմանները հոգալու, քանի որ ինքն էր գործերուն պատասխանատուն։ Անձնական տկարութիւն ալ ենթադրելու տեղի չկայ, զի ընտրութենէն ետքը, եօթը տարի ևս ապրեցաւ, որ գոնէ ընտրութեան ատեն տկարութիւն ունեցած չըլլալը կը ցուցնէ։ Ինչպէս կը տեսնուի, ենթադրելի պատճառներէն և ոչ մէկը հաւանական չըլլալով, ստուգապէս անբացատրելի կը մնայ Սահակի հոգեբանական վիճակը, և սեւեռեալ գաղափարէ կամ մոլամաղձոտ վիճակէ տարբեր շարժառիթ մը դժուար է գտնել իր տարօրինակ ընթացքին։

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

**2045**՝ Գալով Սահակ Անգիւնի հայրապետական աթոռին հանդէպ ունեցած դիրքին, սովորական ցուցակին մէջ անոր անունը կը տեսնենք կաթողիկոսներուն շարքին անցած, Սահակ Ե Կեղեցի կոչմամբ, իբրև օրինաւոր և իսկական կաթողիկոս (ԺԱՄ. 640)։ Սակայն մեր տեսութեամբ հնար չէ իբրև օրինաւոր կաթողիկոս ընդունիլ մէկ մը, որ ոչ օծում է ստացած և ոչ հայրապետական աթոռի վրայ բազմած, և ոչ ալ տիրապէս կաթողիկոսութիւն ըրած։ Այս մասին մեզի ձայնակից կը գտնենք Երեւանեցին ալ, որ անոր անունով գլխակարգութիւն չկազմեր (ՋԱՄ. 32), և Շահխաթունեանը, որ անոր անունն իսկ ծանօթութեանց մէջ կը թողու (ՇԱՀ. Ա. 230)։ Սահակ ինքն ալ հայրապետական ոչ մի գործի ձեռնամուխ եղած չէ, եպիսկոպոս ձեռնադրած չէ. կ'երեւի թէ կոնդակ իսկ տուած չէ. միայն գոհացած է ատոր անդ յանուն կաթողիկոսութեան եղած իրաւունքները և հասոյթները գանձել, թէպէտ Էջմիածին անոր բան մը ղրկած չերեւիր։ Երբոր իր վրայէն ձեռք քաշելու և կաթողիկոս մը ընտրելու միտքը հաստատուեցաւ, Աստապատցին Կարին ղրկուեցաւ որպէս զի առցէ ի Սահակայ զհաշիւ հասից կաթողիկոսութեանն (ՋԱՄ. Գ. 686). այլ կ'երեւի միայն հաշիւը առնելու, և ոչ թէ գանձուած գումարները ետ պահանջելու համար. որպէս զի գիտնան թէ ինչ գանձուած է, և ինձ գանձելի կը մնայ, որպէս զի ըստ այնմ կանոնաւորուին ապագային մէջ։ Սահակի վրայ հինգերորդ թուահամարին կիրառութիւնն ալ աւելորդ կը սեպենք, զի այդ թուարկութիւնը օրինաւոր կը գտնենք միայն գահակալներու և աթոռակիցներու վրայ. իսկ Անգիւն ոչ մէկն եղաւ և ոչ

միւսը։ Սովորութիւն է թուարկեալ համարը պահել եւ երբոր խկապէս մէկէ մը գործածուած է, ըլլայ օրինաւոր ըլլայ ապօրինի կերպով․ իսկ Սահակ Անագինի առեն թուարկութեան սովորութիւնը չկար, և կիրառութիւնն ալ չեղաւ, ուստի պէտք ալ չէ հինգերորդ թուահամարը լրացած և փակուած կարծել․ և եթէ ապագային Սահակ մը ընտրուի, անոր կը մնայ Սահակ Ե կոչումը գործածել։ Այս սկզբունքով Աղեքսանդրի մահէն 1755 նոյեմբեր 11'էն (§ 2041), մինչև նոր կաթողիկոսին օծումը 1759 նոյեմբերին, աթոռոյ պարապութեան միջոց կը հաշուուի՝ չորս տարի կատարեալ, որ միջոցին տեղապահութիւնը վարեց Յակոբ Շամախեցի եպիսկոպոսը (§ 2042)։ Իսկ մենք նոր կաթողիկոսին ընտրութեան չանցած, պէտք է յառաջ բերենք միւս աթոռներուն անցքերը՝ Աղեքսանդրի ընտրութեան ժամանակէն սկսելով։

**ՍԱՐԱՖԵԱՆԻ ԹԱՓԱՌՈՒՄՆԵՐԸ**

**2046**․ Յիշեցինք իւր կարգին Սարաֆեան Սարգիս եպիսկոպոսը, Կոլոտի աշակերտներէն (ՍՐԳ․), որ Գաղատիոյ առաջնորդութենէն ետքը, Երուսաղէմի նուիրակութիւն էր ըրած, և թէպէտ ամբաստանուած իբր արդիւնքին անհաւատարիմ, սակայն Նալեանի շնորհիւ վճարած գումարին համար Շղթայակիրէ մուրհակ մը ստանալով (§ 2001), չիտակ Զմիւռնիա էր դարձած, և աւելի ապահով սեպած Արեւմուտք երթալ Լատիններէն օգտուելու համար։ Սարգիս 1744'ին չիտակ Վենետիկ կու գար (ԳԱԼ․48), միւս տարին 1745'ին Հռոմ կ'անցնէր, և երկու տարի այնտեղ մնալէ ետքը, 1747'ին կրկին Վենետիկ կը դառնար, և տպագրութեան ու հրատարակութեան ձեռնարկին կը հետեւէր, իրեն համար յատուկ տառեր ալ պատրաստել տալով (ԳԱԼ․50)։ Սարաֆեան այդ ձեռնարկին մէջ անշուշտ նիւթական շահուն մտադրութենէն ալ հեռու չէր, և ըստ յայն գործ՝ ինչ էր քաղաքին չէին. Նպաստներ գտնելու հետամուտ էր, բայց ոչն կամք նորա ու յաջողէին (ԳԱԼ․51)։ Արեւմուտք իւր կարծած բախտը իրեն չէր տուած, անոր համար նորէն Հռոմ ու Լիվոռնօ հանդիպելով, 1754 զատիկէն ետքը կը դառնար Զմիւռնիա, Սահակ Անագինի առաջնորդութեան միջոցին (ԳԱԼ․55)։ Սարաֆեանի ներբողաբանը հռոմէադաւանութեան ժոխոռ, այսինքն քարոզիչ ըլլալու նպատակը կու տայ անոր Արեւելք դառնալուն (ԳԱԼ․258), սակայն Սարաֆեանի ձեռնասունը, աւելի անկեղծ, կը խոստովանի, թէ գողութեան ուրեմն արծաթոյ ասէին, զոր ու թեթեւ անդ ինքեան յետ նորա, որոշէր Բողոսն իմաստ զՎենետիկ, լուալ փառնել զհայրենեաց բնիկ (ԳԱԼ․53), այսինքն դրամի բախտը փնտռելու համար կը դառնար, և ոչ թէ ուրիշ նպատակով։ Սարգիս Զմիւռնիայէ Պրուսա՝ և անկէ Կ-Պոլիս եկաւ, մայրաքաղաքը աւելի յարմար գտնելով իւր չահադէտ նպատակին․ և նախ Նալեան պատրիարքը, իւր հին ընկերակիցը չահիլ ջանաց, որպէսզի իրեն կռուան մը կազմէ։ Բայց կարծել թէ Սարգիս՝ Յակոբ պատրիարքի թոյլտուութեամբ իւր հռոմէական դաւանութիւններն օխոյ (ԳԱԼ․275), բոլորովին չը ճանչնալ է Նալեանի անձը, բանիւ և գրով հռոմէադաւանութեան դէմ մաքառողը, և հայադաւանութեան եռանդուն պաշտպանը, թէպէտ խոհական միջոցներով։ Նմանապէս Սարգիսի վրայ ծանր կասկածներ յուզուելէ, և նորա ֆռանկութեան և պատրիարքական աթոռի թեկնածութեան մասին գրոյցներ շրջելէ, և այդ մասին քննութիւններ կատարուելէ ետքը Սարգիսի պաշտօնի անցնիլը, և պատրիարքական հաստատութեամբ Ռոտոսթոյի առաջնորդ երթալը (ԳԱԼ․68), յայտնի կը ցուցնեն, թէ նորա Վենետիկ և Հռոմ երթալով հռոմէադաւանութեան յարելէն ետքը, ետ դառնալով Նալեանի ձեռքին ներքեւ նորէն պատրիարքարանէ առաջնորդութիւն ընդունիլը, կրկին հայադաւանութեան համակերպելուն և հըպատակելուն արդիւնքն է։ Ասիկայ ուրիշ բան չցուցներ, բայց եթէ Սարաֆեանի յեղյեղուկ ընթացքը, զի որ կողմէ բախտ մը կամ դիւրութիւն մը կը յուսար՝ այն կողմ կ'անցնէր։ Այդ բանը իրմէ զատ ուրիշ Հայ եկեղեցականներու վրայ ալ կը նշմարուէր այն առեն, երբոր իրենց ձգտումներուն կամ ակնկալութիւններուն յագուրդ չէին գտներ։ Սամուէլ Երզնկացի վարդապետ, Նալեանի փոխանորդը, միջնորդի դերը վարած է Սարաֆեանը Նալեանի հաճելի ընելու (ԳԱէ․

59)։ Իսկ Սահակ Անագինի՝ Սարգիսի դէմ թշնամական ընթացք կը վերագրուի, և չենք վարանիր վերաբերելու իբրու դէմ նախանձաբեկ քայլեր վարելնին ընդունիլ, բայց այս պարագայով ևսւքանդեւս կը չեղասուի, թէ Նալեան հոմէշաղաւանութեան մօտեցած չէ, այլ Սարգիս հայադաւանու֊թեան գաղափը օգտակարագոյն գտած է։

**ՍԱՐԱՖԵԱՆԻ ԸՆԹԱՑՔԸ**

**2047**. Սարգիս Սարաֆեան Ռոտոսթոյի առաջնորդութեան անցնելով, ինքզինքը ապահով սեպեց նորէն գոյն փոխել, և համարձակեցաւ իսկ խիստ ոճով նամակ մը գրել Յակոբ Նալեան պատրիարքին, որ այնպիսի պարունակութիւն ունէր, լոյս ի նախոտ էր, և ոչ ճոխ ինչ ծանր էր (ԳԱԼ. 68), ինչպէս իւր ձեռնասունն ալ կը խոստովանի։ Առաջ հետեւանքը կ՚ըլլայ Սարգիսի համար աքսորի հրամանը, և կը ձերբակալուի Կ-Պոլիս գալուն, ուր կ՚ուզէր իւր ըրած սխալները դարմանել՝ սակայն չհամնիր մտադրութիւնը իրականացնել։ Կ-Պոլսոյ մէջ Սիմէոն Երեւանեցի վարդապետէ հիւրնկալութիւն գտնելն ալ (ԳԱԼ. 279), մեզի համար նշան է Սարգիսի անգամ մըն ալ հայադաւանութեան ծոցը ապաւինելուն, զի ուրիշ կերպով հնար չէր Սիմէոնի միտքն ու համոզումներն ունեցողի մը՝ հռոմէադաւանութիւն քարոզողին պաշտպան կանգնիլ։ Մինչ Սարգիսի յեղյեղուկ ընթացքին նշաններն են, որ դիմացնիս կ՚ելլան։ Սարգիս ձերբակալուած և ձիու վրայ ոտքերէն շղթայուած Ռոտոսթոյ, անկէ ալ նաւով Տարտանէլի նեղուցին վրայ Պօղազհիսար կը տարուի, սպասելով որ Կիպրոսի Մաղոսա ամրոցը տանող նաւ գտնուի։ Այդ միջոցին բարեկամներու և նիւթական նուէրներու և Սարգիսի մօրը թախանձանքներուն շնորհիւ, հրաման կը տրուի աքսորավայրը Քիոս կղզին փոխել, և տանիք բերդարգելութեան հոն ազատ թողուլ, ինչպէս ալ կը գործադրուի (ԳԱԼ. 283)։ Այդ եղելութիւնները պէտք է դնել 1756՚ին, որ է Սիմէոն Երեւանեցիին Կ-Պոլիս գալուն թուականը (§ 2042)։ Սարգիսի Քիոսի մէջ մնացած ժամանակը ճշդուած չէ, բայց երկար եղած պիտի չըլլայ, զի իրեն պաշտպաններ գտնուած են Կ-Պոլսոյ մէջ, որ պատրիարքն ալ համեցուցած են զայն Եւդոկիոյ առաջնորդ անուանելով աքսորավայրէն ազատել, և այնպէս ալ եղած է։ Բայց Սարգիս նախ Կ-Պոլիս գալով, հոն մնացած է (ԳԱԼ. 284)։ Այստեղ ալ աւելորդ չըլլայ դիտել տալ, թէ անշուշտ Սարգիս իւր հայադաւանութեան համար յայտարարութիւններ ըրած և վստահութիւն ներշնչած է, որ իրեն պաշտպան ամիրաներ գտնուած են, և Նալեան ալ նորէն զայն առաջնորդութեան կոչելու հաճած է։ Սարգիս տկարութիւն պատճառելով Կ-Պոլիսէ մեկնած չէ, և Եւդոկիոյ առաջնորդութիւնը տարի մը փոխանորդով իր վրան պահած է, մինչեւ որ վերջնապէս հրաժարելով Կ-Պոլսոյ մէջ հաստատուած է՝ եկեղեցիէ եկեղեցի փոխադրուելով քարոզչական պաշտօնով, ինչպէս Սամաթիոյ Ս. Գէորգը, Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչը (ԳԱԼ. 301), Պալաթու Ս. Հրեշտակապետը (ԳԱԼ. 305), դարձեալ Ղալաթիա (ԳԱԼ. 306), և նոյն իսկ Վասփորի եկեղեցիները (ԳԱԼ. 301)։ Սարգիս յաջողած է շատերուն համակրութիւնը գրաւել, որով իրեն նուիրուեցան Յակոբ պատրիարքէ և Սիմէոն եպիսկոպոսէ ըրած փախստութիւնները, մինչեւ իսկ աքսորի աաթիւ ըրած ծախքերուն փոխարինութիւն ստացաւ (ԳԱԼ. 300)։ Անոնք ուրիշ կերպով չէին կրնար իրականանալ, եթէ ոչ ջերմ հայադաւան լինելը երաշխաւորելով, և ոչ թէ ինքզինքը հռոմէադաւան ցուցնելով, ինչպէս իւր ներբողաբանները կ՚ուզեն ենթադրել։ Մանաւանդ չէին ալ պակսիր Սարգիսի վրայ կասկածով նայողներ, և անոր քարոզներուն հետեւողներ՝ հայադաւանութենէ օտար Բան մը կամ խօսք որսալու համար, որ կարենան զինքը բամբասել (ԳԱԼ. 304)։ Եւ եթէ Սարգիս գիտէր ինքզինքը տարիներով վտանգէ ազատ պահել, ուրեմն հռոմէականութենէ ալ հեռու կը մնար այլեւս, ցորչափ հայադաւանութիւնը իւր չահադէտ ձգտումները կը գոհացնէր։

**2048**. Կոստանդնուպոլսոյ վրայ խօսուած ատեն, անհնար է յաւթեամբ անցնիլ մայրաքաղաքին մեծամեծները, որոնք մեծ ազդեցութիւն և գրեթէ տիրապետութիւն կը վայելէին ազգային կեանքին և ազգային

գործերու վրայ։ Արդէն առիթ ունեցանք յիշատակել Սեղբեստրոս Երեւանեանցը (§ 1947), Յակոբ Յովհաննէսեանը (§ 2036), կամ սովորական կոչմամբ Սեդրոս և Եաղուպ ամիրաները, որոնց երկրորդը աղետալի մահ ունեցաւ, իսկ Սեդրոս խաղաղութեամբ վախճանեցաւ 1754 փետրուար 5'ին, Ս. Սահակ Պարթեւի չարաթ օրուան երեկոյին (ԱՅՏ. Ա. 82)։

**ԱՄԻՐԱՆԵՐՈՒ ԳՈՐԾԵՐԸ**

Այդ մեծամեծներ, ոչ յատուկ ընտրութեամբ և ոչ պաշտօնական անուանումով կը վայելէին այդ իրաւունքը, այլ իրենց դիրքով և իրենց դրամական կարողութեամբ՝ ազդեցութեան տէր կը դառնային։ Տաճիկ պաշտօնեաներ, մեծ եպարքոսէն սկսելով, իւրաքանչիւրը իւր ելեւմտական գործակատարը կ'ունենար, որ իրեն վաճառապետ կամ սեղանաւորն էր, պէտք եղած ատեն պահանջուած գումարները հայթայթելու կամ հրամայուած ծախքերը ընելու պաշտօնով, և փոխադարձաբար ամէն կերպերով իրենց գլխաւորին համար դրամ ճարելու իրաւունքներով։ Այդ իրաւունքները կարգ ու կանոն, չափ ու կոպար չունէին։ Արդարութիւնը ծամածռել, պաշտօնները վաճառել, պաշտպանութիւնը սակարկել, և նմանօրինակ գործեր՝ այդ վաճառապետներուն ձեռքով կը կատարուէին, որք ոչ միայն իրենց պաշտպանը կը հարստացնէին, այլեւ իրենք կ'օգտուէին, և երբ իրենց պաշտպանը բարձր դիրքի հասնէր, իրենք ալ ըստ այնմ ազդեցութեան և իշխանութեան տէր կը դառնային, և ազգային շրջանակի մէջ ալ իրենց կամքը կը քալեցնէին։ Բայց որովհետեւ անհաստատ էր պետական պաշտօնեաներուն դիրքը, և անակնկալ տապալումներ և ոչնչացումներ սովորական էին, ազգային մեծամեծներն ալ նոյն բախտին ներքեւ կ'իյնային, և ցանցառ չէին իրենց գլխով և գոյքով՝ իրենց գլխաւորին անիրաւութիւնները քաւող, և անոնց հետ տապալուող և ոչնչացող Հայերուն օրինակները, ինչպէս Եաղուպի համար պատմեցինք (§ 2036)։ Ժամանակին գլխաւորներուն մէջ կը յիշուին Ղազար Ակնեցի, և Պետրոս Ալեքսանեան՝ Կամարակապցի ընկերներ և եպարքոսական վաճառապետներ (ՊԱՍ. 10), Մաթոս [illegible], այսինքն սեղանաւորներու արհեստապետ (ԳԱԼ. 278), որ Նալեանի թիկունք էին. Աբրահամ Քիւլէկեան, Սիմէոն Աստուրեան, Մարտիրոս Ջօպանեան կամ Հովուեան, Գասպար Մուրատեան և Պաղտասար Մուրատեան (ԳԱԼ. 70), որոնք իբրեւ մեղմ ընթացքի պաշտպաններ կը յիշուին. Պետրոս Պուտունսուզեան, Մուրատ Մուրատօղլու և Փիլիպպոս Մուրատեան, որ էջմիածինի հետ յարաբերութեան մէջ էին (01 ՕՐԱ. 143). Պաղտասար Սրմաքէշ և Միքայէլ Տիւզեան, հռոմէականութեան հակամէտներ ըլլալով մէկտեղ, խօսքով կը մերժէին իբր [illegible] (ՉԱՄ. Գ. 868)։ Մենք հետամուտ չենք սոնց իւրաքանչիւրին գործունէութիւնը առանձինն պատմել, միայն անունները քաղեցինք իբր յիշատակ։

**2049.** Երուսաղէմի պատրիարքութեան բարձրացած տեսանք Թէոդորոս Խորենացին 1752'ին (§ 2037)։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱԹՈՌ**

Իրեն օրով կատարուած իրողութեանց գլխաւորն է զանազան ազգերու մէջ յուզուած սեփականութեանց նոր վէճը։ Լատինները 1756'ին Գաղղիոյ դեսպանատան ձեռքով հրամանագիր մը ձեռք ձգեցին Աստուածածնայ եկեղեցին նորոգելու և սեփականելու համար։ Յոյներ իսկոյն բողոքեցին, իրենց հին հրովարտակները ներկայացուցին, և Լատինները ձեռք անցուցած տեղերնէն արտաքսելու նոր հրովարտակ առին 1757'ին, յատուկ պաշտօնեայ մըն ալ ղրկել տուին Կ-Պոլիսէ, որ Երուսաղէմ երթալով 1758'ին Լատինները հանեց Ս. Աստուածածնայ և Ս. Յարութեան եկեղեցիներէն, և հոկտեմբեր 7'ին Բեթղեհէմի Ս. Ծննդեան եկեղեցիէն (ԱՅՏ. Բ. 84)։ Յոյներ ստացած հրովարտակնուն սահմանն անցնելով, յատուկ պաշտօնէին ձեռքով Հայերն ալ վտարեցին յիշեալ սրբավայրներէն, և պէտք եղաւ որ Թէոդորոս պաշտպանութեան ձեռնարկէ։ Կարեւոր փաստերը հաւաքելով և տեղական դատաւորէն տեղեկագիր առնելով, Կ-Պոլիս հաղորդեց։ Նալեան պատրիարք գործը ստանձնեց, և 1759'ին Մուսթաֆա Գ սուլտանէն նոր հրովարտակ ստացաւ Հայերու սեփականութեանց հա-

*մար, և ըստ այնմ Հայերուն վերադարձուեցան իրենցմէ յափշտակուած տեղերը* (ԱՍՏ. Ա. 87)*։ Այդ յաջողութեան աշխատողներ եղան Ղազար Ակնեցի և Պետրոս Կամարակապցի ամիրաներ, և Գրիգոր վարդապետ Պասմաճեան Թոդորոսի փոխանորդը Կ-Պոլսոյ մէջ* (ՊԱՄ. 11)*։ Իսկ վէճերը և չփոթները հիմնովին չվերջացան։ Դամասկոսի կուսակալները փոփոխակի Լատիններէ և Յոյներէ կաշառուելով խնդիրները չվերջացուցին. Երուսաղէմացի Տաճիկներուն անհիմն պահանջումներուն կարեւորութիւն տուին, քրիստոնեաները նեղեցին, Հայերն ալ այդ երեսէն տագնապներ կրեցին, ծախքերու պարտաւորուեցան, պարտքերու ներքեւ ինկան, և կուսակալներու կողմէն բարդուած պարտքերուն հանդէպ անբաւական գտնուեցան։ Թէոդորոս պատրիարք երկարօրէն կը գրէ այդ ամէնը* 1760 *մայիս* 13*'ի ընդարձակ նամակով* (ԱՍՏ. Բ. 91—96), *և Կ-Պոլսոյ պատրիարքարանէն օգնութիւն և պաշտպանութիւն կը խնդրէ։ Կը յիշէ նաև Երուսաղէմի գանձանակին Էջմիածինի գանձանակէն ետքը դասուած ըլլալը, որ վնաս կը բերէր Սուրբ Տեղեաց նպաստներուն, և կ'ազդարարէ նաև որ Երուսաղէմի մասին պատրիարքէ և խորհրդականներէ չկնքուած գրութեանց կարեւորութիւն չտան* (ԱՍՏ. Բ. 96)*։ Այդ պարագաներ գոնէ մեզի ցոյց կու տան ժամանակին տեղի ունեցող դեղձումները։*

**2050.** *Մեր ձեռքը գտնուած աղբիւրներ և յիշատակներ շատ աղքատ են միւս աթոռներու պատկանեալ տեղեկութեանց վրայ։*

**ԿԻԼԻԿԻՈՅ ԱԹՈՌ**

*Պատմեցինք արդէն, թէ Միքայէլ Աջապահեան Կ-Պոլիս կը գտնուէր երբ իւր եղբայրը կը մեռնէր* (§ 2008), *և իբր արդէն օծեալ կաթողիկոսակից՝ կը փութար աթոռը գրաւել։ Միքայէլի կեանքէն կը յիշուի ուրիշ երկու անգամներ ալ* 1749*'ին և* 1751*'ին Կ-Պոլիս եկած ըլլալը* (ՋԱՄ. 99), *առիթ առնելով Էջմիածինի սեփական և իրեն սահմանակից վիճակներուն խնդիրները, և ջանալով իւր իրաւասութիւնը ընդարձակել։ Այդ փորձերը կը պատասխանեն Պրոխորոնի յափշտակութեան* (§ 2029), *և Ղափանցիին պատրիարքութեան* (§ 2036) *թուականներուն, ինչ որ կը ցուցնէ թէ խորհած է առիթներէն օգտուիլ, և զգուշացած է Նալեանի պատրիարքութեան միջոցին այսպիսի խորհուրդներ մշակելէ։ Իբր 20 տարի պաշտօնի վրայ գտնուած է Միքայէլ, և բաւական արդիւնաւոր եղած պիտի ըլլայ, որ տապանագիրին մէջ Ճէձն ընտրէլ և ճէմաֆոյն վէրաբէրէլ գրուածքներ արձանագրուած են* (ՍԻՍ. 217)*։ Որոշակի գրուած չենք գտներ, բայց իբր ստոյգ կը կարծենք ընդունիլ, որ ինչպէս Միքայէլ իւր երիցագոյն եղբօրմէն կաթողիկոսակից օծուած էր* (§ 2008), *անանկ ալ ինքն իւր կրտսերագոյն եղբայր Գաբրիէլը, կաթողիկոսակից և յաջորդ օծած ըլլայ, աթոռը Աջապահեան ազգատոհմին ձեռքէն չհանելու համար։ Մանր եղած է հանգուցեալ, Ռ և Երկու Ճ և Է թուականին, այսինքն է* 1758*'ին* (ՍԻՍ. 217), *իսկ ամսաթիւ յիշուած չէ։ Յաջորդութիւնը առանց միջադէպի կատարուած կը կարծենք նախորդին կենդանութեան տեւն կարգադրուած ըլլալով։ Այսպէս երեք եղբայրներ, Ղուկաս ու Միքայէլ ու Գաբրիէլ իրարու յաջորդած են Կիլիկիոյ աթոռին վրայ, հազուադէպ պարագայ մը որեւէ աթոռի մէջ։ Չմոռնանք յիշել, որ այդ միջոցներուն Գոզանօղլու տոհմը սկսած էր բռնապետել Կիլիկիոյ մէջ, և կաթողիկոսներն ալ մերթ անոնց պաշտպանութեանց և մերթ հարստահարութեանց կը հանդիպէին, ինչպէս որ բռնաւոր իշխաններուն չարը կամ հաճոյքը իրենց կը թելադրէր։ Կիլիկիոյ կողմերը բազմաթիւ էին կէս ինքնագլուխ ցեղապետներ, անուանական հպատակներ Կեսարիոյ Օսմանեան կուսակալին։ Անոնց մէջէն Սիսի վրայ բռնացողը Լիւանօղլուն էր, որ տէր զինէնէ քինէլյուղէ Լէօն Թագաւորէն Հայոց։ Անոր դէմ ելաւ Եուսուֆ Գոզանօղլու, անտոհմիկ մարդ մը, որ Տէվէլու գաւառի ցեղապետին այրին հետ ամուսնանալով, նախ այն տեղ կը զօրանայ, և վերջէն Լիւանօղլուն ալ հալածելով էշիէ թալաթէն և ասհմանոցն Սօօյ, և մինչեւ իսկ Տորոսի լեռնաշղթային այդ մասը յանան էր անաանէ Գոզանօղլէ* (ԴԻԻ. Դ. 730)*։*

**2051.** *Նուազագոյն ևս են միւս աթոռներուն մասին գիտցածնիս։ Աղթամարայ կա-*

թողիկոսութեան մէջ Նիկողայոս Սպարկերտցիէ ետքը (§ 2018) կը յիշուի Գրիգոր կաթողիկոս մը, որ 1758'ին աթոռին վրայ կը գտնուի, բայց անկէ աւելի տեղեկութիւն չունինք (ՕՕ ԲԻՉ. 1199)։

**ՈՒՐԻՇ ԱԹՈՌՆԵՐ**

Աղուանից աթոռին վրայ կը շարունակէ Ներսէս Գանձակեցին (§ 2009), որ մինչև 1763 ապրած է (ՋԱՄ. 66)։ Իսկ Պարսկաստանի աթոռին վրայ, Զաքարիա՝ երկամեայ առաջնորդութենէ կամ ըստ այլոց տեղեկալութենէ ետքը (§ 2038) պաշտօնէ կը հանուի (ԽԱՉ. 285), և 1754'ին կ'ընտրուի Գէորգ Ջուղայեցի, այն որ յիշուեցաւ սուրբ գիրքերու պարսկերէնի թարգմանութեան առթիւ (§ 2021), և էր այր աստուածաշնորհ և մեծիմաստ (ԽԱՉ. 285)։ Բայց չկարենալով տոկալ Պարսկաստանի անիշխանութեան երեւէն տեղի ունեցած խռովութեանց նեղութեանց և հալածանաց բռնաւորաց, Ս. Ամենափրկչի վանքին թանկագին սպասները հաւաքելով, հանդերձ երեւելի միաբանիւքն կը քաշուի Պասրա քաղաքը, որ Պարսկաստանի թեմ էր, և այն տեղէն վերջ ղրկուած առաջնորդութեան։ Վանքին մէջ մնացող Պետրոս և Բարսղամ վարդապետներ 1760 սեպտեմբեր 20'ին կը թախանձեն որ դառնայ, յայտնելով թէ յառաջադրած Յովհանէս, տանս տէր չկայ, բայց Գէորգ չվստահիր դառնալ, և Պասրա կը մնայ տակաւին մինչև 1763 (ՏՑՈ. Բ. 61), մինչև որ Քէրիմ խան զօրանալով երկիրը քիչ մը կը խաղաղի։

**2052**. Ժամանակակից նահատակներուն յիշատակներէն գլխաւորն է Խանում Վաղարշակերտացի կոյսը,

**ԽԱՆՈՒՄ ՎԱՂԱՐՇԱԿԵՐՏՑԻ**

բնիկ Բագրեւանդ կամ Ալաշկերտ գաւառի Թօփրաքքալէ աւանէն, տեսքով ֆոյլան և նախշանէն, և ձայնովը լսողները զմայլեցնող աղջիկ մը (ՆՈՐ. 565)։ Ինչպէս և ինչու չենք գիտեր, մայրը մահմետականութիւնը կ'ընդունի, և աղջիկն ալ կ'ուզէ ընկերացնել. բայց Խանում խոյս կու տայ, Արածանիի մէջ կը նետուի, հետապնդողներ կիսախեղդ դուրս կը հանեն, Անթափ գիւղի մէջ կազդուրելով մօրը կը յանձնեն, որ չէյխերու կը դիմէ։ Անոնք ալ խոստումներով չկրնալով շահիլ, առեւան կը հանեն, կը բռնանան, [illegible], և չկրնալով անոր միտքը փոխել տալ, մահուան կը դատապարտեն, իբրև իսլամութիւնը անարգող իր խիստ պատասխաններով, ու դահիճներուն կը յանձնեն (ՆՈՐ. 566)։ Նախ կողէն կը խոցեն, և վերջէն անդամ անդամ կը յօշոտեն, իբրև կեր գազանաց (ՆՈՐ. 564). բայց քրիստոնեայք հաւաքելով կը թաղեն գերեզմանատան մէջ, Եկեղեցւոյն և աղբիւրին մէջտեղը, ուր տապանաքար մը միայն կը ցուցնէ նահատակ կոյսին գերեզմանը (ՆՈՐ. 566)։ Նահատակութեան թուականն է 1755 մայիս 3, Նոր կիրակիին չորեքշաբթին (ՆՈՐ. 562)։

**2053**. Ուրիշ նահատակի մըն ալ գերեզմանը կը տեսնուի Տաւրիկեան նահանգի կամ Խրիմի Ղարասուբազար քաղաքի Ս. Աստուածածին եկեղեցւոյ գաւիթին մէջ։

**ՓՌԱՆԿՈՒԼ ՇՐՋԸՎԱՆՑՑԻ**

Անունը Փռանկուլ, Ազիզ պէկի որդի, բնիկ [illegible] ի գիւղէն Շրջվանց, որ պէտք է Արարատի գիւղերէն ըլլայ, թէպէտ չենք կրցած ստուգել։ Բասենեայ երիտասարդ, որ [illegible], այսինքն կախաղան կը հանուի. սակայն տապանագիրը ուրիշ պարագայ չտար, և ուրիշ կողմէ տեղեկութիւն չէ հասած։ Նահատակութեան թուականն է 1757 յունիս 1 (ՆՈՐ. 567), որ կը հանդիպի Էջմիածինի տօնի կիրակէին։ Շատ հաւանական է որ Փռանկուլ Շրջըվանցցիին նահատակութեան պարագաները յար և նման ըլլան Սահակ Բրուտեցիին պարագաներուն, որ նոյնպէս Արեւելքէն գալով Խրիմի մէջ նահատակուեցաւ, նորահաս երիտասարդութեան տարիքին (§ 1962)։

**2054**. Այս տեղ աւելցնենք քանի մը նահատակներու անունները ալ, որոնց կը հանդիպինք աստ և անդ

**ՈՒՐԻՇ ՆԱՀԱՏԱԿՆԵՐ**

առանց պատմական պարագաները գիտնալու։ Սարգիս դպիր կը յիշէ Աստուածատուր Մալղարացին, նահատակուած 1710 յունուար 10'ին, երեքշաբթի օր (ՍՐԳ.), որ կը համեմատի Աստուածայայտնութեան հինգերորդ օրուան։ Նահատա-

կութեան տեղը Կ-Պոլիս եղած կ'երեւի, և տէրցու Պօղոսուն ղլըմըմըքէնն ֆէրեւլէ կ'ըսէ, բայց մենք չենք տեսած: Բանկալ-թիի գերեզմաննոցի մէջ բաւական թուով Նահատակներու գերեզմաններ կը գտնուին, որոնց տապանագիրներէն միայն պէտք է քաղենք հակիրճ տեղեկութիւններ: Հօղըր հօքէօր և չօրօ ֆօտն, ընդ օրօ և չօրօ յօրօ-ըօֆեօլ, այսինքն 1735 թուականին Նահա-տակուած է Յակոբ յօղնօղը տօյօ ֆօջօջօն, որ տէօֆ մահօօլ եր և տօօյէ, բայց չէրէօօյեօլ է օօօօերօօ, ենեղ ըօրէօնն ֆէօյօլօնս: Կոմիտաս Գըլէճիկցին ալ որդի Պէկօղլիցի Սաւէթի, 1742'ին ֆօխեյօօ կ'ըսուի պարզապէս, սա-կայն տապանաքարին վրայ կախուած մար-մին մը քանդակուած է, որ Նահատակու-թեան նշանակ է:

**2055**. Ընդարձակ տապանագիր մը ունի Յարութիւն Նահատակ, որդի Թօփճիօղլու Սահակի, որուն հայրենիքը և ծննդավայրը չէ յիշուած, այլ Կ-Պոլսոյ մէջ կատարուած է: Տապա-նագիրը Նահատակին բերնէն գրուած է, ո-րով կը խոստովանի, թէ Իրեւնէրէ ամօյօ ըօօղօ հեօօէօյէ, այսինքն է 33 տարեկան իսլամութիւն ընդունած է, և տօօն և ճէկ ամօ եօքը օղրեօօյ, այսինքն է զղջացած է: Այդ զգացմամբ համարձակ իշխանութեան կը ներկայանայ. ֆնօյէ, կ'ըսէ, օօէ. հօօօօն էմ ինչ, յեր յեղ չէյէ, և պատուոյն առջեւ ելլալով ըհօօօօօ ենտըրեյէ: Այդ պատճառով իբր իսլամութենէ ետ դարձող, վճիռ կը տրուի որ ֆըլխօօեօյէ, սակայն է կօխօղօնէ կը Նահատակուի, ինչպէս տապանաքարին քան-դակն ալ կը ցուցնէ: Թուականը ՋՂՋԱՄ ե-օէօ ցուցուած է, որ է 1748 Նոյեմբեր 27, և ըստ այսմ ուրացութիւնը հանդիպած կըլ-լայ 1747 Նոյեմբերին: Միեւնոյն 1748 թուա-կանին ուրիշ Նահատակ մըն ալ կայ, մի-եւնոյն պարագաներու մէջ վկայած, ո-րուն տապանաքարը գլխատման քանդակ ունի, և Նահատակի բերնէն գրուած է, թէ առաջ ըհօֆէօ մօօնեյէ տօօօխէ, բայց վերջէն Տէօօն ըօրէօն էմ հեղէ: Սակայն տապանագի-րին մէջ Նահատակին անունն իսկ յիշուած չէ, գուցէ վերոյիշեալ Յարութիւնին ընկե-րակից մըն է:

ՅԱՐՈՒԹԻՒՆ ԹՕՓՃԻՕՂԼՈՒ

# Տ. ՅԱԿՈԲ Ե. ՇԱՄԱԽԵՑԻ

**2056**. Սահակ Անազինի տարօրինակ ըն-թացքը (§ 2043), ամէնուն վրայ տխուր տպաւորութիւն մը թողած էր, և եկեղեցին անզլուխ կացութեան ենթարկած էր: Եթէ ամէն Հայ պէտք էր զգածուէր այդ պարագայէն, աւելի խո-րապէս զգածուելու իրաւունք ունէին Մայ-րաթոռի միաբանները, որոնք իրենց կարգն ու սարքը կորուսած, յայտնի չէր թէ կա-թողիկոս ունէին կամ թէ ոչ, և չէին գի-տեր թէ ինչ ուղղութեան պէտք էր հետեւ-էին: Միաբաններուն մէջ ալ աւելի արտա-յայտ ունէին երկուքը, որ գլխաւորներն էին, և Անազինի ընտրութեան առեն գոր-ծի վրայ գտնուած էին, և բնաւ կողմնակից ու համակիր չէին եղած այդ ընտրութեան, գուցէ Անազինի սարսամ բնաւորութեան գիտակ ըլլալով: Բայց իրենց ձայնը ույժ չէր ունեցած, և Անազինի ընտրութիւնը մայ-րաքաղաքի մեծամեծներուն կամքով, ան-շուշտ Նալեանի ալ ազդեցութեամբ, կա-տարուած էր: Այդ երկուքն էին Սիմէոն Երեւանեցին և Աբրահամ Աստապատցին (§ 2042): Ասոնք կանուխէն սկսան խօսիլ ու պնդել, համոզել ու տարածել, թէ պէտք է Սահակէն ձեռք քաշել, նա կաթողիկո-սութիւն ընելիք չունի, Մայրաթոռը առանց կաթողիկոսի թողուլ հնար չէ, նոր կաթո-ղիկոսի ընտրութիւն կատարել անհրաժեշտ է: Երեւանեցիին և Աստապատցիին խօս-քերը առջի բերան մեծ ազդեցութիւն չըր-րին, իրենց համար աշխատելնուն կասկածը կը տիրէր, բայց հետզհետէ պարագաները սկսան անոնց իրաւունք տալ, գի տարիներ կը լրանային և Անազին տակաւին էջմիա-

ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ ԱՆՀՐԱԺԵՇՏ

ծին գացող, օծում ընդունող, և գործի տիրութիւն ընող չէր։ Անշուշտ իրենց համախոհ էր Յակոբ Շամախեցին ալ, բայց նա մէջտեղ չերեւնալու խոհեմութիւնը կը պահէր, ինչ որ տեղակալի պաշտօնն ալ կը պահանջէր։ Նալեան պատրիարքն ալ, որ իւր ընկերակցին Սահակի պաշտպանն էր եղած, և կը չարունակէր ըլլալ, կամաց կամաց կը ստնար Ահազինի պահանջից ու պատչաճից չափն անցընելը, և հարկաւ կը զգար անոր պատճառաւ տիրող անկերպարան վիճակը, և դարման մը հոգալու ստիպողականութիւնը։ Գրուած չենք գտներ, բայց անհնար է որ մտերմական նամակներ ալ փոխանակուած չըլլան Նալեանի և Ահազինի միջեւ, և գուցէ իւր յորդորներուն յարգուած չըլլալն էր, որ Նալեանի ալ միտքը փոխեց, և Երեւանեցիին ու Աստապատցիին կողմն անցնելով հաւանեցաւ կաթողիկոսական խնդիրին համար մեծամեծներու ժողով գումարել։ Արդէն ասոնց մեծագոյն մասը Ահազինէ իրաւամբ պաղած, և նոր կաթողիկոս ընտրելու կողմը դարձած էր։ Ընտրելիի անձին վրայ ալ մեծ խնդիրներ ու դժուարութիւններ չծագեցան։ Նալեան երկու անգամ, Աղեքսանդրի (§ 2040) և Սահակի (§ 2042) ընտրութեանց առեն հրաժարած էր այդ պաշտօնէն, և երրորդ անգամ ընտրելի ըլլալու կամք չունէր, և իրմէ զատ ալ Տաճկահայերու մէջ կարկառուն դէմք մը մնացած չէր։ Երեւանեցին և Աստապատցին՝ Ահազինի դէմ այնչափ մաքառելէ ետքը չէին կրնար անոր տեղը անցնիլ՝ առանց ինքզինքնին մեղադրանքի ենթարկելու։ Կը մնար Շամախեցին որ չորս տարիներէ իվեր աթոռը կը կառավարէր առանց կաթողիկոսական ստիճանի և անունի, և իրեն վրայ դիտողութեան առիթ չէր տուած։

**ՆՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ**

**2057**. Կոստանդնուպոլսոյ մէջ կաթողիկոսութեան ընտրական ժողովը գումարուեցաւ 1759 օգոստոսին, հաւանաբար Աստուածածնայ տօնին, որ օգոստոս 15'ին կը հանդիպէր, կամ տօնին մօտ օր մը։ Սահակ Կեղեցիի ընտրութիւնը չեղեալ նկատեցին, քան թէ ընկեցին ընդ յիշխանութենէն, զոր կանոնաւորապէս և արարողապէս ստանձնած չէր, և կաթողիկոս հռչակեցին Յակոբ Շամախեցին, չորս տարիէ իվեր տեղակալութիւն վարող և արդիւնաւոր եղող եպիսկոպոսը։ Ընտրութիւնը հաւանութեամբ յերկուց կողմանց եղած կ'ըսուի (ՇԱՀ. Ա. 230), որ է ըսել է թէ Մայրաթոռոյ հաւանութիւնը կանուխէն ապահովուած էր, և Երեւանեցին ու Աստապատցին գործին ներկայ և երաշխաւորները էին։ Անմիջապէս երկուքն ալ ճանապայ ելան որոշումին գործադրութեան համար, Երեւանեցին դէպի Էջմիածին և Աստապատացէն դէպի Կարին։ Հազիւ թէ Կ-Պոլսոյ մէջ ընտրութիւնը լրացաւ, մէջտեղ ելաւ Սահակէ գրուած նամակ մը, որուն մէջ կ'ըսէր, թէ ուրախութիւն կամի յեր է զի ընտրեցէք յէջմիածին, առն ըստ կամաց յերուց ընտրեալ անդր։ Այդ նամակին առիթ տուած էր՝ Գասպար Մուրատեան ամիրային կողմէ Սահակի իմաց տրուած ըլլալը, թէ իւր ընտրութեան ջնջուիլը մօտալուտ է, և Սահակ ուզած էր այդ կերպով վտանգին առջեւն առնուլ և ազգը խաբել, զի իրօք տեղէն չարժուած չէր։ Երբ ամիսներ ետքը Աստապատցին Կարին հասաւ, Սահակը իւր տեղը գտաւ, որ բնաւ երթալու չարժում ըրած չէր։ Չենք կրնար հաւաստել թէ Սահակին նամակը օրը օրին Շամախեցիի ընտրութենէն ետքը հասաւ. բայց եթէ օր առաջ ալ հասած էր, և Նալեան կամաւ զայն ընտրութենէ առաջ մէջտեղ չէր հանած, դարձեալ մենք գովելի պիտի ըսենք Նալեանի ըրածը, որ ուզած է վերջնականապէս փակել Սահակի ստեղծած տարօրինակ վիճակը, և թոյլ չէ տուած որ այն տակաւին անպայման կերպով չարունակէ։ Նալեան նախապէս մեծամեծներէն մէկ քանի գլխաւորներուն հաղորդեց նամակը, և երբ անոնք համաձայնութեամբ պատասխանեցին, զոր ընտրեցաք՝ ընտրեալ է, այլ եւս հարկ ալ չեղաւ նորէն ժողով գումարել, և նամակին վրայ խորհիլ (ՁԱՄ. Գ. 866)։ Նամակը գրողին գալով, անհնար է զայն արդարացնել, և կեղծիքի ու խաբկանքի մեղադրութենէ ազատել, որ չորս տարի ազգն ու եկեղեցին խաղցնելէ ետքը, տակաւին սիրտ կ'ունենայ բանագբօսիկ կամ կեղծեալ յայտարարութիւններով այդ տխուր ընթացքը երկարել։

ՅԱԿՈԲԻ ՆԱԽԸՆԹԱՑԸ

**2058**. *Երբոր Աստապատցին Կարին հասաւ, այնտեղ գտաւ Շամախեցին ալ Սահակի այցելութեան եկած, ինչ որ կը ցուցնէ թէ որդիքն զղջացեալ չեն, որ Շամախեցին Սահակը յորդորէր՝ ժողովել ժող յէջմիածին* (ՉԱՄ. Գ. 865)։ *Սահակը Էջմիածին գալէ ետ ընելու համար, պէտք չէր զգացուեր անձամբ այցելութեան գալ չորս տարի ետքը։ Աստապատցին փութաց Կարնոյ եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր կերպով ծանուցանել և հրատարակել Կ-Պոլիս կատարուած ընտրութիւնը, Սահակի ընտրութեան ջնջումը, և Շամախեցիին կաթողիկոսութիւնը։ Սահակէ հաշիւ ալ պահանջեց, որովհետեւ շատ բան գանձած էր Էջմիածինի հասոյթներէն, և գործատար նուիրակացն նմա փոյթն զորդեանն և զհօգեան նուիրակաց* (ԴԻՒ. Գ. 30)։ *Հաշիւը ստացաւ յետ ամբ քննելոյն, այսինքն կուսակալին, որ կը ցուցնէ թէ արքունական հրովարտակ ալ բերած էր, Սահակի դադարումը և Շամախեցիին ընտրութիւնը հաստատող։ Կուսակալին միջամտութեան դիմուիլը կը ցուցնէ, թէ Սահակ դժկամակութիւն ցուցած է իւրացուցած գումարներն ու հաշիւր տալու։ Վերջապէս գէշ աղէկ հաշուական գործն ալ կարգադրելէ ետքը և գումարներն ալ վճարելու խոստումի վրայ, Աստապատցին առջեւ կ'անցնի և Շամախեցին Էջմիածին կառաջնորդէ, և 1759 նոյեմբեր 24'ին օծման հանդէսը կը կատարուի, ինչպէս Չամչեան կը գրէ* (ՉԱՄ. Գ. 866), *և Շահխաթունեան կը կրկնէ* (ՇԱՀ. Ա. 230)։ *Յիշուած թուականը Ցինակաց պահոց չորեքշաբթիին կ'իյնայ, և հաւանական է որ գրչութեան սխալ մը սպրդած ըլլայ ամսաթիւին մէջ, քանի որ հաւանական չէ լուր օր և պահոց օր այսպիսի հանդէս մը կատարելնին, և յարմարագոյն կը թուի նոյեմբեր 28 կիրակիին յետաձգել։ Երեւանեցին որ գործունեայ դեր մը ունեցաւ Յակոբ Ե Շամախեցին կաթողիկոսութեան բարձրացնելու մէջ, կը ներկայէ զայն իբր այր պիտանի և խորհրդական, խելօք և հանճարեղ յամենայն գործս, գիտուն և շնորհալի։ Մանկութենէն Մայրաթոռի մէջ սնած և ապրած, և բազմակողմանի ուսմամբ զարգացած էր, այնպէս որ առնէր զամենայնից զինչ և խնդրէին։ Ինչ տեսակ գրութիւն ալ որ պէտք ըլլար, ինքն կը խմբագրէր և փոյթ հրահրեաց որ ընդօրինակեն, և այս ոչ միայն հայերէն, այլեւ պարսկերէն լեզուով, զի նա ինքն էր որ հերէր և հոգայր զերոց որբանոցաց և զաղքատանոցաց։ Երեւանեցին կ'աւելցնէ թէ նաև զորդեանս, այսինքն իւր առնն ալ Շամախեցիին թողած պատճէնները կը պահուէին և կը գործածուէին իբրեւ պաշտօնական գրութեանց պատրաստ ձեւեր, յորոց հրաւիրէր առնուլ զօրինակս հրեշտակաց խորհրդոց* (ՋԱՄ. 32)։ *Ինչպէս կը տեսնուի Շամախեցին Մայրաթոռին ներքին գործերուն նուիրեալ անձ մը եղած է, և շատ շրջագայած չերեւիր։ Նա ալ ազատ չէր մնացած Ջահկեցիին բռնութիւններէն* (§ 2024), *իսկ Մինասի և Աղեքսանդրի օրով լաւ դիրք վայելած պիտի ըլլայ, իբր փոխանորդ և ընդհանուր գործակատար, որով վերջնոյս մահուընէ ետքը երկարատեւ տեղակալութիւն վարելու կոչուեցաւ։ Աւելի այդ առաջին ժամանակին պէտք է վերագրել Երեւանիցիին ըսելը, թէ առնէ զանձամբ բարեբարութեան իսկ առաւելն, վասն զի կաթողիկոսանալէ ետքը ծերացած էր, և առեն ալ չունեցաւ անհամար գործեր կատարելու։ Կը յիշուին միայն կալուածական պաշտօնագիրներու ստացութիւնը, և Երեւանի մէջ Զորագիւղի անպատին նորոգութիւնը, զոր կազմակերպեց իբրեւ զտուն հայրապետանոցի* (ՋԱՄ. 33)։

ՄԱՆՈՒԷԼԵԱՆ ԽՄԲԱԿԸ

**2059**. *Կոստանդնուպոլսոյ կացութիւնը բուական հանդարտ կ'անցնէր Նալեանի պատրիարքութեան ներքեւ, որ իւր վարդապետին Կոլոտի ընթացքին հաւատարիմ հետեւող, միջասահման բինի ձեւ կը գործածէր համերաշխ հաշտութիւն պահելու համար բուն հայադաւան և մեղմ հռոմէադաւան տարրներուն մէջ։ Կոլոտ իւր անձնական հեղինակութեամբ կրցած էր զսպուած պահել երկկողմանի ծայրայեղները, և այս կերպով առաջն առած էր բուռն վէճերու և ներհակընդդէմ պայքարներու։ Նալեան, թէպէտ հմտութեամբ և կարողութեամբ Կոլոտէ ստորին չէր, և իւր երկասիրութիւններով առաւելութիւն ալ ունէր, սակայն Պոլսոյին չը-*

փոխը, և Պրուսա քաշուիլը և Երուսաղէմ երթալը խախտած էին իր դիրքը, և Եաղուպի պաշտպանութեամբ գտնալէն ետքը, իր պաշտպանին եղերական վախճանը (§ 2036), պակսեցուցած էր իրեն ներքին ոյժը, և առիթ կ'ընծայէր ժողովրդական չչուկներու, և կաթոլիկութեան հանդէպ թոյլ և զիջողական վարուող մը կը կարծուէր։ Սակայն Նալեանի բռնած թոյլատու և ներողամիտ ընթացքը՝ չէր այլայլած երբեք անոր ներքին համոզումները, և եթէ իրեն չուրջը գտնուողներ, և առաջին գիծին մէջ Սարգիս Սարաֆեան եպիսկոպոսը, կաթոլիկութեան միտումներ կը ցուցնէին, սակայն չէին կրնար իրենց հայադաւան ուղղութիւնը փոխած ըլլալ, քանի որ Նալեանի գործակից էին։ Հակառակ Նալեանի զգուշաւորութեանց՝ շփոթ մը յուզուեցաւ 1761 ամառուան վերջերը։ Գլխաւորն էր Մանուէլ Բալուեցի քահանան, [illegible] (ԳԱԼ. 97) և [illegible] (ԳԱԼ. 102) կոչուած, կ'երեւի անձեւ կողմին համար, իրեն ընկեր ունենալով ուրիշ քահանայ մըն ալ՝ Սարգիս Տիպաճեան (ՉԱՄ. Գ. 867), և աշխարհականներէն Յովհաննէս Սափրիչ, Մովսէս Տիվրիկցի, և Մեծմամեան կոչուած մէկ մը, և [illegible] (ԳԱԼ. 97)։ Յովհաննէսի համար ըսուած է թէ բնիկ Ագուլեցի է եղեր, մանկութեան առեն լատինամիտ կրթութիւն առած, քանամեայ ըլլալէն ետքը սկսեր է [illegible], առոր համար երեք անգամ պատժուեր է [illegible], բայց վերջապէս միտքը լուսաւորուեր, և [illegible] եղեր է որ Հայոց եկեղեցին է [illegible]։ Անոր վրայ [illegible] անունով գիրք մըն ալ շարադրել և տպագրել տուեր է (ԳԱԼ. 303), և Մանուէլ քահանայի միաբանութեամբ՝ նախանձայոյզ պայքարող ալ դարձեր է։ Այս խումբը նախապէս Սարգիս Սարաֆեանի դէմ կ'ելլէ, առիթ առնելով անոր ինչինչ անզգոյշ խօսքերը թէ [illegible], կամ թէ՝ [illegible] և ուրանալով ալ [illegible] (ԳԱԼ. 98), ինչ որ կը ցուցնէ թէ աւելի կոկորդի գիտութիւններն են եղեր՝ կաթոլիկներու հրապարակիչ դրդիչները։ Մէջտեղ կը դնեն նաեւ Երուսաղէմի նուիրակութեան ժամանակէն դրամ իւրացուցած ըլլալուն մասին տարածուած խօսքերը (§ 2001)։ Բայց Նալեան նորէն Սարաֆեանը կը պաշտպանէ Շղթայակիրին տուած ընկալագիրին փաստովը, թէպէտեւ ինչպէս ժամանակին դիտեցինք, գումարի մը ընկալագիրը հանգամանքութեան քննակին փաստը չէ։ Իսկ [illegible] ամբաստանութիւնները Սարաֆեան ինքը կը ցրէ, որ է ըսել բացարձակ հայադաւանութեան յայտարարութիւն կու տայ։ Արդ եթէ [illegible] ալ տուած չէ, գոնէ պաշտօնական ձեւակերպութիւնը պահած է, զի առանց այդ զգուշաւորութեան հնար չէր որ նորէն Գալաթի (ԳԱԼ. 103) և Ղալաթիոյ (ԳԱԼ. 104) մէջ քարոզչութիւն ընէր, Մանուէլեան խմբակին հսկողութեան և գրգռման ներքեւ։

**2060.** Մանուէլեան խմբակը իր գործունէութիւնը ալ աւելի առաջ մղելով, Ֆրանկացեալներուն դէմ ամբաստանագիր տուաւ նախ իսկ [illegible], թէ օտար եկեղեցիներ կը յաճախեն, և դեսպաններու պաշտպանութեամբ կը ճոխանան, և տեղական իշխանութիւնները կ'անարգեն։ Տրուած յայտարարութիւնը ստուգելու համար, կառավարութեան յատուկ պաշտօնեաներ ղրկուեցան կիրակի օր մը, 1761 նոյեմբեր 11'ին, Ղալաթիոյ Ս. Պետրոս, Ս. Գէորգ, և Ս. Բենեդիկտոս լատին եկեղեցիները, որոնք հոն գտնուող Հայերէն 52 հոգի ձերբակալելով նաւատեղեաց բանտը տարին։ Բանին միջոցը Նալեան պատրիարքի հաճութեամբ չէր, ուստի դժուար չեղաւ բանտարկելոց ազատութիւն ստանալ։ Մանուէլի խմբակը նոր ամբաստանագիր մատոյց կառավարութեան 1762'ին սկիզբները, և այս անգամ յանուանէ 24 հոգիներու անուններ տալով։ Նալեան եղելութիւնը իմանալով ինքն հոգ տարաւ որ ամբաստանեալներ մէջտեղ չերեւան, և մէկ մը՝ գոհարավաճառ Յովհաննէս Թումաճանեան ձեռք ինկաւ, և հարցափորձի ենթարկուեցաւ։ Պէտք եղաւ պատրիարքի վկայութիւնը լսել, որ հաստատեց թէ ձերբակալեալը իր ժողովուրդէն Հայ մըն է, և

ԿԱԹՈԼԻԿԱԿԱՆ ԽՆԴԻՐՆԵՐ

այնպէս արձակուեցաւ. նոյնպէս միւս 23'ներուն ձերբակալութեան հրամանն ալ ետ առնուեցաւ: Երբոր եպարքոսը պատրիարքէն բացատրութիւն կը խնդրէր, թէ ինչո՞ւ խախամ և կէֆէ յաւղլին վաւն օղլինոյ չերոյ, և թէ չի՞րդը ու տանըն փոյթ անոնց առջևէն առնել, Նալեան պարտաւորուեցաւ յայտնել, թէ Մանուէլ քահանայ մը և Յովհաննէս սափրիչ մը առանց իր հրահանգին գործերու կը ձեռնարկեն: Ասիկայ բաւական եղաւ որ ձերբակալութեան հրաման ելլէ Մանուէլի խմբակին համար, որոնցմէ չատեր, ինչպէս և Սարգիս Տիպաճեան քահանան պատրիարքին գթութեան դիմեցին, իսկ Մանուէլ և Յովհաննէս խմբակներու ձեռք իյնալով բանտարկուեցան և վերջէն աքսորուեցան (ՉԱՄ. Գ. 867-871):

**2061**. Նալեանի այդ ընթացքը կը հաստատէ, թէ Հայոց պատրիարքարանը ներողամիտ և թոյլատու ընթացք ունէր լատինամիտներու հանդէպ, քանի որ անոնք իրենց խորխս և ներողամիտ ընթացքով չէին զայրացներ ուղղամիտ ժողովուրդը, չէին անարգեր ազգային եկեղեցին, և չէին զեղծաներ օտարատեսուչ ձգտումներով: Չենք կարծեր որ կաթոլիկութեան պաշտպաններ, Նալեանի այդ ընթացքը տեսնելով, յանդգնին զայն ալ կաթոլիկացած ըսել, քանի որ անոր գիրքերը մշտաբարբառ կը քարոզեն իր հաստատուն համոզումները: Այս կ'ըսենք, որովհետև սովոր կը տեսնենք որ առաջնորդի մը մեղմ ընթացքը, և վարդապետի մը չափաւոր խօսքը, կաթոլիկ գրողներու ձեռք իբր հիմ կը ծառայեն զանոնք համակրողական հռչակելու: Նոյնպէս եպիսկոպոսի կամ վարդապետի մը ներողութենէ խուսափելու կամ չահ ու նպատակ մը ձեռք ձգելու համար Արևմուտք դիմելը, և հոն տեղական պահանջից համակերպիլը, անոնց գրիչին տակ համակրողականութեան ճշմարտութիւնը հաստատող փաստեր կը դառնան: Բայց ուղիղ տեսութեամբ իրենց դատը աւելի կը տկարացնեն, երբ այդպիսի միծուն և անարժէք փաստերով՝ զայն արդարացնելու կ'աշխատին: Կաթոլիկ գիրքերու մէջ սովոր կը տեսնուին, ասիկէ ու անկէ քաղուած և փաստի նպատակով՝ արկածախնդիր վարդապետներու և եպիսկոպոսներու անուններով կազմուած ցուցակներ, բայց ատոնք ոչ հայադաւանութեան միաս, և ոչ համակրողականութեան օգուտ մը կրնան պատճառել: Այդ պատճառով հետամուտ չենք այնպիսիներու անունները քաղել, քանի որ բնաւ կարևորութիւն չունին: Ամենուն տեղ բաւական ըլլայ Սարգիս Սարաֆեանի կեանքին և գործունէութեան վրայ տուած տեղեկութիւննիս, որ երբ Արևմուտքի հետապնդելը իր չահադիտութիւնը կը գրգռէ, Իտալիա կ'անցնի և համակրողական կ'ըլլայ. իսկ երբ դուշերսէ երձամիոյ օվլա, շուշ ու կը տեսնէ ատը բիլէճէն չեանտա (ԴԱԼ. 53), նորէն Արևելք կը դառնայ և հայադաւան կ'ըլլայ, մինչև որ այստեղ ալ ակնկալութիւնները նուազելուն՝ նորէն Արևմուտքի ճամբան բռնէ:

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
ԱԹՈՌ

**2062**. Թէոդորոս Երուսաղէմի պատրիարքը, որ 1752'էն աթոռի վրայ կը գտնուէր (§ 2049), հաւեալ էր ի բոց ծերանքեան փէտրոյեալ, և սոփյուած է ճանէն, մինչև չկրնալ վեբեւ շուշոդ իչեանաբեան խոռոյ: Ուստի պարտաւորուեցաւ Յովհաննէս եպիսկոպոսի յանձնել լիազօր փոխանորդութիւնը, մինչև նոր ընտրութիւն (ԱՍՏ. Բ. 97), իսկ իբր յաջորդ յանձնարարեց իր ձեռնասուն Կարապետ Գանձակեցի եպիսկոպոսը, որ նուիրակութեամբ Ատանա կը գտնուէր (ԱՍՏ. Բ. 99): Թէոդորոս հոգ տարաւ կենդանւոյն յայտարարել և վաւերական կոնդակով հաստատել, թէ բոլոր իր ունեցածները, ցեյէսլին պարմաքսան և վէրալէս, աթոռին սեփականութիւն են, և ինքն անձնական ոչինչ չունի, որով իր մերձաւորներէն ոչ ոք կրնայ իբր ժառանգորդ բան մը պահանջել (ԱՍՏ. Բ. 97): Թէոդորոսի այդ զգուշաւորութիւնը օգտակար եղաւ՝ իր ազգականներէն ոմանց պահանջումները ցրելու, որոնք անոր մահուընէն ետքը վանքէն ժառանգութիւն կը պահանջէին, և այդ առթիւ հոգ տարուեցաւ արքունի հրովարտակով ալ հաստատել, թէ Երուսաղէմի միաբաններուն ժառանգորդը միաբանութիւնն է, և ոչ իրենց ազգականները (ԱՍՏ. Բ. 100):

Թէոդորոս ամենայն ինչ կարգադրելէն ետքը խաղաղութեամբ վախճանեցաւ 1761 դեկտեմբերի վերջի օրերը, և թաղուեցաւ Ս. Փրկիչ վանքը, ջորուն համար կանուխէն պետական հրամանն ալ առնուած էր, Տաճիկներու կամայական արգելքներուն տեղի չտալու համար (ԱՍՏ. Բ. 98)։ Երուսաղէմի միաբանութիւնը Թէոդորոսի մահուան գոյժին հետ, Կարապետի հաստատութիւնն ալ խնդրեց Կ-Պոլսոյ պատրիարքարանէն։ Սակայն ազգային մեծամեծներ որ արդէն 1762 յունուարին գոյժն ու առաջարկը առացած էին (ՊԱՍ. 11), չուզով չհամակերպեցան, և կ'ուզէին պատրիարքութեան կոչել Գրիգոր Պասմաճեան վարդապետը, որ Կ-Պոլիս կը գտնուէր իբր Երուսաղէմի փոխանորդ։ Բայց Գրիգոր ոչ մի կերպով յանձնառու չեղաւ։ Ինքն իբր հրաժեշտի պատճառներ ցոյց կուտայ, իւր անարժանութենէն զատ, համգուցեալոյն կամքը, միաբանութեան կամքը, և Կարապետին քան զինքն Երէցփոխոյն ըլլալը. թէպէտև երկուքն ալ համշիրօղ եղբայր, և մեծ հօր հօրեղբօր Թէոդորոսի ժառանգակից ընտանիք էին (ՊԱՍ. 12)։ Զմռնանք որ Գրիգոր դեռ եպիսկոպոսական ձեռնադրութիւն չունէր, և Պարսկաստանի Ներքին յուզումները կը դժուարացնէին անմիջապէս Էջմիածին երթալը։ Վերջապէս ժողովն ու պատրիարքը հաստատեցին Կարապետի ընտրութիւնը և հրովարտակն ալ առացան, և Կարապետ ալ Կիլիկիոյ Նուիրակութիւնը փակելով Երուսաղէմ հասաւ զատկէն ետքը, որ կ'իյնար 1762 ապրիլ 7'ին, և պաշտօնը ստանձնեց։ Կարապետ գործունեայ Նախընթաց մը ունեցած էր։ Բնիկ Գանձակեցի արեւելեան գաւառներէն, 18 տարեկան եղած ատեն Թէոդորոսի կը յարի Եւդոկիոյ մէջ, անոր Նուիրակութեան միջոցին, և միասին Երուսաղէմ կու գայ 1734'ին, և ուսմանց ու աստիճաններու մէջ յառաջանալէն ետքը, Նուիրակ կը ղրկուի Ակն ու Թոքաթ ու Քղի՝ Շղթայակիրի հրամանով. Նալեան զայն Կ-Պոլսոյ փոխանորդ կը Նշանակէ 1750'ին, վեց տարի ետքը Երուսաղէմ կը ղրկուի Թէոդորոսի և միաբաններուն մէջ յուզուած վէճը հանդարտելու։ Նորէն Նուիրակութեան կ'ելլէ 1760'ին, Նախ Եւդոկիա, և անկէ Ատանա, ուր կը գտնուէր 1761'ին Թէոդորոսի մահուան միջոցին (ԱՍՏ. Բ. 98)։ Այս հաշուով շուրջ 50 տարեկան եղած կ'ըլլայ պատրիարքական աթոռ բարձրացած թուականին։ Իբրև Երուսաղէմի աթոռին պատկանեալ կարեւոր տեղեկութիւն աւելցընենք, որ 1762 մայիս 11'ի Կ-Պոլսոյ մեծ հրդեհին, Մայր եկեղեցւոյ շուրջի շէնքերը, և անոնց հետ Շղթայակիրին շինած հոգետունն ալ (§ 1996) այրելուն վրայ, որոշուեցաւ որ եկեղեցիին շուրջը Ժողովէ Բացօթեայ և գործէլը, ուստի Պասմաճեան փոխանորդն ալ՝ հանդէպ դրան Սուրբ Աստուածածնէ Մայր Եկեղեցւոյն, Նոր բնակարան մը շինեց Երուսաղէմի միաբաններուն համար 1763'ին (ՊԱՍ. 13), որ է այժմեան Երուսաղէմատունին տեղը։

**2063.** Լիբանանի մէջ հաստատուած հռոմէականներուն, այսինքն Անտոնեան միաբանութեան և Նորահաստատ կաթողիկոսութեան մասին չխօսեցանք Արծիւեանի մեռնելէն և Յովսէփեանի յաջորդելէն ետքը (§ 2032)։

ՊԷՅԹԽԱՇՊՕ ԵՒ ԶԸՄՄԱՌ

Այն տեղ յիշեցինք կաթողիկոսարանի համար Զըմմառի բլուրին ստացութիւնը, որուն վրայ Յակոբ Պետրոս Բ կաթողիկոսը փոյթ տարաւ, շինութիւն մը հիմնարկել իբր կաթողիկոսարան։ Բայց վրան արձանագրուած 1749 տարին (ԱՂՔ. Ա. 21) պէտք է իբր շինուածին սկզբնաւորութիւն նկատել և ոչ իբր աւարտման թուական, զի շէնքը անագան վերջացաւ 1771'ին (ԱՂՔ. Ա. 26)։ Յակոբ շինուածին բաւարար ձև մը տալէն ետքը, թողուց Քրէյմի վանքը, և Զըմմառ հաստատուեցաւ 1750'ին, Անտոնեաններէն ալ քանի մը հոգի մէկտեղ առնելով։ Իսկ 1752 յունիս 30'ին ընդհանրական ժողով գումարելով, հաստատեց Մարոնի Անտոնեանց կանոնագիրքին Հայազգի Անտոնեանց պատշաճեցուցած ձեւը, բուն այնմ ալ պապական վաւերացման ենթարկելու համար։ Նկատելի է որ այդ կանոնագիրքին կցուած էր Անտոնեան կարգաց կանոնադրութեանն ալ, թէպէտ այդ մտադրութիւնը գործադրութեան չանցաւ (ԱՆՏ.)։ Կաթողիկոսին Քրէյմի վանքէն հեռանալուն ժամանակակից է, Լիբանանի մէջ երկրորդ վանքի մը համար Անտոնեանց Նոր տեղ ստանալը 1750'ին, որ է

Պէյթխաշպօ կոչուած բարձունքը, Ղազիր և Շնանէյիր գիւղերու միջաւեղ, գեղեցիկ և ծովահայեաց դիրքի մը վրայ։ Հայր Գրիգոր Ներսէսեան աբբահայր՝ Քրէյմի և Պէյթխաշպօյի մէջ ալ կարեւոր շինութիւններու ձեռնարկելէ ետքը, 1752'ին, իւր եռամեայ լրանալուն, գործը կը թողուր նորընտիր աբբահօր՝ Ղուկաս Աբրահամեանին, որ քիչ ետքը եպիսկոպոս կը ձեռնադրուէր հայր Բարսեղ Գէորգեանի հետ, և աբբայական պաշտօնը փոխանորդաբար կը վարէր հայր Յովհաննէս Կարապետեան։ Կանոնագիրը պապական հաստատութեան ենթարկելու համար Հռոմ կը ղրկուէր հայր Գաբրիէլ Մատթէոսեան, իսկ հայր Գրիգոր Ներսէսեանի պաշտօն կը յանձնուէր Հռոմի մէջ ուխտական վանքի մը ստացութեան և կազմակերպութեան գործը ի գլուխ տանիլ։

**ՀՌՈՄԷԱԿԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍՆԵՐ**

**2064**. Ճիշդ այդ միջոցներուն կը վախճանի Յակոբ կաթողիկոսը, ըստ ոմանց մայիս 15'ին (ԱՂՔ. Ա. 23), ըստ այլոց յունիս 10'ին (ԱՆՏ.), իսկ յիշատակուած Հոգեգալստեան օրը այն տարի կ'իյնար մայիս 30'ին, որ կը համեմատի նոր տոմարի յունիս 10'ին։ Յակոբ, հօրենական անունով՝ Մուրատեա՛ն, պապենական անունով՝ Յովսէփեա՛ն, իսկ կաթողիկոսական կոչմամբ Պետրոս Բ, չարունակ յիշատակուեցաւ սկսելով Անտոնեանց սկզբնաւորութեան օրէն (§ 1894), և իբրեւ ամենանշանաւոր դէմք մը պէտք է նկատուի հայ հռոմէական տարեգրութեանց մէջ, իւր համարձակ նախաձեռնութեամբ, անխոնջ գործունէութեամբ, և խոհական չափաւորութեամբ։ Զի եթէ երկու Աբրահամներ իբր հիմնարկուներ կը նկատուին միաբանութեան և կաթողիկոսութեան, պէտք է բացարձակապէս յայտարարել, թէ երկուքն ալ իրենց ձեռնարկին մէջ պիտի չյաջողէին առանց Յակոբի աջակցութեան, որ արգելքներու դիմաց խիզախ և դժուարութեանց մէջ արթուն, կրկին նպատակներուն իրականացման գործադիրն եղաւ։ Ասոր հետ մէկտեղ պէտք է իբր գովեստ յիշել, թէ իւր հռոմէականութեան մէջ ալ զգուշացաւ կծու պայքարներէ և անտեղի նախանձախնդրութիւններէ, որով իւր վրայ ալ խիստ մտադրութիւններ չհրաւիրեց։ Յակոբ թէպէտ Զըմմառի մէջ կը բնակէր իւր կեանքին վերջին միջոցին, բայց գերեզմանը Քրէյմի վանքին մէջ եղաւ (ԱՂՔ. Ա. 23) որ է իւր գործունէութեան առաջին օրրանը։ Երբոր Յակոբ, վերոյիշեալ Ղուկաս և Բարսեղ եպիսկոպոսները կը ձեռնադրէր (§ 2063), անոնց ընկերացնել ուզած էր ուրիշ Անտոնեան միաբան մըն ալ, հայր Միքայէլ Գասպարեանը, և զայն Կ-Պոլիսէ Լիբանան կոչած էր, այլ նա կը հասնէր Յակոբի մեռնելէն ետքը։ Եպիսկոպոսներ ընտրութիւնը լրացած տեսնելով, իրենք կը կատարեն ձեռնադրութիւնը, և իրենց ձեռնադրածը անմիջապէս կաթողիկոսական յաջորդութեան կը կոչեն 1753 յունիս 23'ին, և ընտրութիւնը պապական հաստատութեամբ կը վաւերացուի 1754 մայիս 6'ին։ Միքայէլ Պետրոս Գ թէպէտ Անտոնեան միաբանութենէ, այլ նուազ նպաստաւոր գտնուեցաւ հանդէպ միաբանութեան, նպատակ ունենալով իւր կաթողիկոսական աթոռը զօրացնել, նոյն իսկ միաբանութեան լաւագոյն ույժերը իրեն քաշելով (ԱՆՏ.)։ Միանգամայն ձեռք առաւ Աբծիւեանի մշակած գաղափարը, իւր իրաւասութիւնը բոլոր Հայ կաթոլիկներուն վրայ տարածել՝ ուր ուրեք որ գտնուին, գոնէ Օսմանեան կայսրութեան մէջ, այլ ընդունելութիւն չգտաւ Հռոմի պապութեան կողմէն։ Այդ նպատակով 1758 ամառուան մէջ յատուկ ուղեւորութիւն մըն ալ ըրաւ ի Հռոմ, բայց 1759 ապրիլ 30'ի պապական վճռով, իրեն իրաւասութիւնը Կիլիկիոյ բնական վիճակներուն մէջ պարփակուեցաւ, այսինքն է Կիլիկիա և Ասորիք, Միջագետքի յաւելուածով (ԱՂՔ. Ա. 25)։

**ՀՌՈՄԻ ՎԱՆՔԸ**

**2065**. Իսկ Անտոնեանք կ'աշխատէին ինքզինքնին զօրացնել, թէ Պէյթխաշպօն վերջնական և հաստատուն սեփականութիւն դարձնելով 1760 ապրիլ 12'ի վաւերագրով, և Ս. Անտոն անունով վանք մըն ալ կազմակերպելով, թէ Հռոմի կղերանոցներուն մէջ նորահաս միաբաններ գետեղելով ուսմանց մէջ զարգանալու համար, և թէ Հռոմի մէջ վանք մը ստանալու համար աշխատութիւնները

չարունակելով։ Այդ մասին աւելի աշխատողներն եղան՝ հայր Ռափայէլ Թումայեան երկու եռամեայ շրջան աբբայութեան վրայ գտնուելով, և հայր Գրիգոր Ներսէսեան Հռոմի մէջ անխոնջ և անդուլ հետապնդութեամբ։ Ներսէսեան ոչ միայն Հռոմ այլեւ Նաբոլի և Անքոնա ալ շրջեցաւ յարմար տեղ մը գտնալու յոյսով, պաշ մը Լէոպոլսոյ կամ Իլվովի մէջ հաստատուելու գաղափարն ալ նկատի առնուեցաւ, միանգամայն ստիպուեցաւ Հայ հասմէականներու կողմէն յարուցուած արգելքներու դէմ ալ մաքառիլ։ Միւքայէլ ալ Հռոմ եղած միջոցին երբեք չօժանդակեց իրեն միաբանութեան ձեռնարկին, և այնպէս 1760'ին Լիբանան դարձաւ։ Ներսէսեան 1753'է սկսելով տասը տարիի մօտ այդ նպատակին աշխատեցաւ, և Հայ հասմէականներէ հեռու մնալու համար Ս. Մարիամ Եգիպտացի (Santa Maria Egiziaca) եկեղեցւոյն յարակից հայ հիւրանոցին բնակութիւնն ալ թողլով, Ս. Պանտալէոն (San Pantaleo) լատին վանքը քաշուեցաւ։ Պէտք եղաւ որ պապական արտօնութիւնը ձեռք ձգելու համար՝ շատ մը ձեւակերպութիւններու ենթարկուի, բայց վերջապէս նպատակին հասնելու գոհունակութիւնն ունեցաւ, և 1762 յուլիս 15'ին նօտարական վաւերագրով գնեց Վատիկանի հրապարակին վրայ Չէզի (Cesi) դուքսերուն ժառանգական ապարանքը, յարակից այգիով ու պարտէզով, զոր Ս. Գրիգոր Լուսաւորիչ անունով վանքի փոխարկեց (ԱՆՏ.)։ Այդ գործին մէջ յիշուելու արժանի է նաեւ հայր Թադէոս Գօլօտեան վարդապետը, որ բաղաքէ քաղաք նուիրակութեան պտտելով հայթայթեց այդ ստացութեան համար պէտք եղած գումարը։ Միաբանութիւնն ալ՝ գործին աւելի փայլ տալու համար, վերջին 1761'ի եռամեայ ժողովին մէջ հայր Գրիգոր Ներսէսեանը, բացակայ մնալով ալ, նորէն աբբայական պաշտօնին բարձրացուցած էր, որով ոչ իբրեւ լոկ ներկայացուցիչ, այլեւ իբր գլուխ միաբանութեան ստացութիւնը կնքեց։ Անկէ ետքը Ներսէսեան պարտաւորուած փոփոխութեանց ձեռնարկեց, և 1766 օգոստոս 17'ին, նոյն ապարանքին մէկ թեւին մէջ ձեւակերպած եկեղեցիին նուակատիքը կատարեց (ԱՆՏ.)։

**2066**. Մայրաթոռի կացութիւնը ներկայելու դարձած ատեննիս, հնար էր քիչ մը աւելի տեղեկութիւն տալ Պարսկաստանի ներքին պատերազմներուն վրայ, և ներհակընդդէմ մաքառումները յիշել, բայց այդ մանրամասնութիւնները մեր նպատակէն դուրս կը նկատենք։ Բաւական ըլլայ ըսել, թէ անհնար էր էջմիածինի հանդարտ վիճակ ունենալ և բազմաթիւ տուայտանքներէ ազատ մնալ, երբոր երկիրը անիշխանութեան մատնուած էր, և երբոր ամէն իշխան Հայոց կաթողիկոսարանին վրայ յառած էր իր աչքը՝ անոր ենթադրեալ գանձերէն օգտուելու համար։ Այդ շփոթութեանց և նեղութեանց գլխաւոր ենթարկուողը Շամախեցին էր, նախ իր տեղակալութեան և յետոյ գահակալութեան օրով։ Պարսիկ մրցակիցներուն մէջ ամէնէն կարկառուն դէմքն էր Քէրիմ խան, Զէնտերուն ցեղապետը։ Ալիմէրտան զայն իրեն օգնական և աջակից ըրած էր, և իր սպանուելէն ետքը Քէրիմ տեղը անցաւ, և Իսմայիլ արքայազուն տղուն վրայ թագաւորի անունը պահելով (§ 2024), բացարձակապէս կ'իշխէր Վէքիլ կամ խնամակալ անունով (ՏՊԷ·366), և անոր անունով կը պատերազմէր ուրիշ մրցակիցներու դէմ, մինչեւ որ 1761'ին Ասպահան քաղաքի և Պարսկաստանի արեւմտեան գաւառներուն բացարձակ տէրը դարձաւ։ Բայց պատերազմները չվերջացան, զի պարտաւորուեցաւ թէ արեւելեան գաւառներու մէջ բռնացողներուն, և թէ նաւահեալ գաւառներու մէջ նորէն ապստամբողներուն դէմ ելլալ։ Այդ պատճառներով արշաւանքներ անպակաս եղան նաեւ ի սահմանս Հայաստան աշխարհի (ԽԱՁ·318), որոնց մանրամասնութեանց չենք մտներ։ Բայց անյիշատակ չենք ուզեր թողուլ Ծաթալի խանին անունը, զոր Քէրիմ սպաննել տուաւ [illegible] (ԽԱՁ·324)։ Քէրիմ կը ներկայուի իբր ուղղութիւն սիրող, արդարութեան հետեւող, ժողովուրդին խնայող (ՏՊԷ·366), սակայն այդ չի խափաներ ներքին պատերազմները ու տառապանքները՝ գրեթէ բոլոր իր երկարա-

մեայ թագաւորութեան միջոցին մինչեւ 1779, այնպէս որ Շամախեցին չկրցաւ խաղաղ և հանդարտ և վիշտերէ ազատ օր մը տեսնել: Արդէն տարիքն առած ու աշխատութիւններէ և տագնապներէ յոգնած էր, և հազիւ երեքուկէս տարի մնաց կաթողիկոսական աթոռին վրայ, և վախճանեցաւ 1763 մարտ 21'ին, նոյն խիկ աւագ ուրբաթ օր, չիննէրուէ ժամս գէչէրէն, զոր իղձալ է իմանալ լոյս ուրբաթին: Իսկ ի յօլէրտ առատըն, այսինքն աւագ շաբաթ օրը թաղումը կատարեցին և ամփոփեցին Ս. Գայիանէի բակին աջակողմը (ՇԱՀ. Ա. 231): Էջմիածինի մէջ աւանդաբար կը պատմուի, թէ ծաղրածու հռչակուած Ահարոն վարդապետը, աւագ ուրբաթ օր մը, երեկոյեան ժամերգութեան վերջ Քրիստոսի թաղման նախատօնակը կատարուելէն ետքը, կաթողիկոսին նոյն օր մեռած ըլլալուն առթիւ, օղի և գինի առնելով վանքին աղբիւրին գլուխը՝ կը սկսի միաբանները խմելու և զուարճանալու հրաւիրել, զգուշելով թէ Քրիստոս մեռած է և կաթողիկոսն ալ մեռած է, և թէ այսպիսի առիթ մը մէյ մըն ալ ձեռք չեն կրնար անցընել: Անշուշտ Շամախեցիի մահուան պէտք կ'ըլլայ պատշաճեցնել այդ աւանդական պատմուածքը:

**2067**. Առանց փառաւոր գործունէութիւն մը պատմած ըլլալու, և առանց փայլուն արդիւնաւորութիւն մը ցոյց տալու ալ, չենք վարանիր Յակոբ Ե Շամախեցի կաթողիկոսին անունը արժանաւոր հայրապետներուն հետ դասել: Մանկութենէ սկսելով վանքին ծառայելը, համեստ բայց և օգտակար պաշտօններու մէջ աշխատիլը, երկարատեւ առաջնորդութեամբ աթոռը պաշտպանելը, և աննպաստ ժամանակին պարագաներու ներքեւ անընկճելի յարատեւելը, խնդական արդիւնաւորութեան փաստեր են, և բաւական են իր անունին փառք ու փայլ աւելցնել: Իրբեւ վարչական կանոնաւորութեան փաստ յիշենք Դաւաղանագիրքը, զոր 1743'էն, Ջահկեցիին օրէն սկսելով կազմելու ձեռնարկած էր, Մայրաթոռի անցքերը արձանագրելու համար (ԴԻԻ. Գ. Ե.): Շամախեցին հեռանկատ քաղաքականութենէ ալ հեռու



մնացած չէ: Այն ձեռնարկը զոր Օրի զինուորականը և Մինաս վարդապետը այնչափ խնամով մշակած էին, Ռուսական պետութեան պաշտպանութեամբ Մայրաթոռը Պարսկական անտանելի դարձած լուծէն ազատելու, բաւական ժամանակէ ի վեր մոռցուած էր, և Կարապետ Ուլնեցիէ ասդին, ամէնքն ալ Տաճկաստանէ գացող կաթողիկոսներ, այլեւս դէպ հիւսիս աչք դարձուցած չէին (§ 1956): Շամախեցին է որ նորէն այդ գաղափարը կը նորոգէ, 1760 յուլիս 20'ին Ռուսիոյ Եղիսաբեթ կայսրուհւոյն գրած նամակովը, որով կը խնդրէ Հայ ուղուրունէ ժողովուրդէն ու Վրաց մաքէն հօգևորուլուքէան ատենան (ՋԱՄ. Բ. 48): Շամախեցիին դիմումին առնէ Ռուսիոյ մէջ տեղի կ'ունենային այլակրօններու դէմ մղուած հալածանքները, այլ երբ ուրիշ եկեղեցիներ կը փակուէին, բոց ծոց մայն Հայոց Առաքէլոնէ եկեղեցէն (ՋԱՄ. Բ. 51): Շամախեցիով նորոգուած այդ սկզբնաւորութիւնն է, որ յաջորդներուն օրով հետզհետէ մշակուեցաւ ու աճեցաւ, և վերջապէս արդիւնաւորուեցաւ, թէպէտեւ 70 տարի հետաւորութեամբ:

**2068**. Շամախեցիին մահուանէ ճիշտ ամիս մը առաջ, 1763 փետրուար 22'ին, Մեծ պահոց երրորդ շաբաթ օրը վախճանած էր Կարնոյ մէջ, Սահակ Ահագին (ԱՍՏ. Բ. 99), տարօրինակ անձնաւորութիւնը, ընտրուած ու չհրաժարած, բայց խուսափած ու մերժուած կաթողիկոսը: Սահակ վահճանեցու էջմածինէ (ՋԱՄ. Գ. 866), իբր զի յղբօնոսն է տանէ է Կարէն, է Կարմիրվանեան, ղարանք նմա ցա տատէկ, և տանէ զնա ուղուբոսէ, և կը վախճանի է նոյն գէչէրէ (ԴԻԻ. Գ. 31), և կը թաղուի Կարնոյ Ս. Լուսաւորիչ վանքին եկեղեցւոյն քովը: Հանդիսադիրը կ'ըլլայ Սիմէոն Երեւանեցին (ՍՐԳ.), որ Կ-Պոլսոյ նուիրակութենէն Էջմիածին կը դառնար, և քիչ օր ետքն ալ Շամախեցիին թաղման պիտի գտնուէր: Սահակի վրայ նորէն չենք խօսիր, բաւական գրեցինք իր ընթացքին նկատմամբ (§ 2043), և նոր աւելցնելիք չունինք: Յաւելի է ապաքէն որ աչքառու դէմք մը, ինչպէս էր Սահակ, որ իր վրայ մեծամեծ

յուսադրութիւններ կը հրաւիրէր, և քանիցս հայրապետական բարձր աստիճանին արժանաւոր նկատուած էր, բոլորովին մոռցուած և սառնացած վիճակին մէջ կը մնանէր, որուն իսկական պատճառը, ամենց հակառակութիւնէն աւելի, իւր տատամսոտ և վարանոտ ընթացքն էր եղած։ Միւս կողմէն պէտք չէ նաև մոռնանք, որ դրամական գործին կարգադրութիւնն ալ զանց ըրաւ, և խոստմանը հակառակ (§ 2058) վճարումները չկատարեց։ Թէպէտ այս պատճառով Շամախեցիին և Անագինի միջեւ անկաւ խռովութիւն մեծ և վէճ, այլ Կ-Պոլսոյ մեծամեծներուն միջնորդութեամբ Շամախեցին ի բաց եկաց ի դահանջելոյ, և հազիւ ուրեմն հնար եղեւ խնդիրը փակել, և ի մէջ երկոցունց շնորհութիւն հաստատել (ԴԻՒ. Գ. 31)։

# Տ. ՍԻՄԷՈՆ Ա. ԵՐԵՒԱՆԵՑԻ

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ԵՒ ՕԾՈՒՄ**

**2069.** Յակոբի թաղումը և զատկի տօնը անցնելէն ետքը Մայրաթոռի միաբանութիւնը ըստ սովորութեան ձեռնարկեց նոր կաթողիկոսի ընտրութեան, բայց այս անգամ համաձայնութիւնը դժուար եղաւ, որովհետեւ չկար այնպիսի մէկ մը՝ որ իւր ազդեցութեամբ և իւր արդիւնաւորութեամբ կանուխէն ամէնուն միտքերը գրաւած ըլլար։ Նալեան ալ, ոչ միայն քանիցս հրաժարած էր, այլեւ վերջին եկողներ անոր ախտակիր և անկարացած ըլլալուն լուրը բերած էին։ Աւելի խօսուած անուններն էին, Յովհան Ամդեցի՝ Գլակայ առաջնորդ, Աբրահամ Աստապատցի՝ Զմիւռնիոյ նուիրակ, Սամուէլ Երզնկացի՝ Պրուսայի առաջնորդ, և Յարութիւն Բասենցի՝ նուիրակութենէ դարձած (ՋԱՄ. Գ. 869), բայց ոչ մէկուն վրայ որոշ մեծամասնութիւն մը չէր համաձայներ, և չորս գումարումներ առանց հետեւանքի մնացած էին, իսկ Սիմէոն Երեւանեցիին վրայ խօսող չի կար։ Անոր գործունէութիւնը ծանօթ էր, բայց բուռն բնաւորութեամբը սիրելի եղած պիտի չըլլար. Տաճկահայերուն ալ հաճելի չըլլալուն կասկածը կը տիրէր, բայց վերջապէս հինգերորդ գումարումին մէջ՝ անկէ զատ յարմարագոյն մը չկարենալով գտնել, միաբանութիւնը անոր անունին վրայ կը համաձայնի, և կ'ըսուի թէ Յարութիւն Բասենցին աւելի մաս ունեցած է այդ ընտրութիւնը յաջողցնելու մէջ (ՋԱՄ. Գ. 870)։ Հազիւ այդ համաձայնութիւնը գոյացուցած, խկոյն օծումը կատարելու կը ձեռնարկեն, որ և տեղի կ'ունենայ 1763 ապրիլ 20'ին Երեւման խաչի կիրակէին, առանց սպասելու Կ-Պոլսէ և ուրիշ կողմէ հաւանութիւն ստանալու։ Գուցէ կը խիթային որ նոր արգելքի չհանդիպին, և Տաճկահայերն ալ լրացեալ գործողութեան մը դիմաց գնել կը մտածէին։ Սիմէոն պատմութեանս համար անծանօթ դէմք մը չէ, շատ եղելութեանց մէջ անոր անունը յիշած ենք, և զանազան պարագաներու մէջ վարած դերը բացատրած։ Այսու հանդերձ, նկատելով անոր կաթողիկոսական ընդարձակ գործունէութիւնը, կ'արժէ որ նախընթացին վրայ աւելի լիագոյն տեղեկութիւններ տանք։

**ԱՌԱՋԻՆ ԿԵԱՆՔԸ**

**2070.** Ոմանց կարծիքով, Սիմէոնի ծագումը ազնուական եղած է, թէպէտեւ Գռոշեան իշխանազուններէն եղած ըլլալը, կամ Մուբեանց տոհմին իշխանազուն ըլլալը պատմական ստուգութեանց կը կարօտին (ԴԻՒ. Գ. ԽԱ.)։ Սիմէոն ծնած է Երեւանի քաղաքամէջում, ծնողքն են Կարապետ ու Գայիանէ, և եղբայրները Մելքիսեդեկ ու Յարութիւն ու Ղազար, իսկ ծննդեան թուականը, զոր ինքն ալ երբեք չէ յիշած, մերձաւորաբար 1710'ին կը հաշուուի (ԴԻՒ. Գ. ԽԲ.)։ Առաջին տարիքէն ուշիմութեան և յաջողակութեան համբաւ հանած է Մայրաթոռոյ դպրոցին մէջ, մինչեւ Կոլոտի փափաքը շարժել զայն իւր կողմը ձգելու համար, և պաշտօն յանձնել Անագինի, որ Էջմիածին գտնուած միջոցին

պատանի Սիմէոնը հրապուրէ (Դիւ. Գ. կե)։ Սիմէոն Էջմիածինի դպրոցին ընթացքը կ'աւարտէ, օգտուելով մանաւանդ Շամախեցիին ուսուցչութենէն, և անմիջապէս նոյն դպրոցին մէջ ուսուցչութեան կը կոչուի, և առաջիկային նշանաւոր հանդիսացող Մայր աթոռոյ միաբաններ, բոլորն ալ Սիմէոնի աշակերտած և Սիմէոնով զարգացած ըլլալնին պարծանօք կը յիշեն։ Սիմէոն տակաւին դպիր էր, երբ Յարութիւն Ջուղայեցի եպիսկոպոսին մօտ՝ Պայազիտի նուիրակութեան օգնական նշանակուեցաւ, և սարկաւագ եղած ատեն նոյնէն իբր ընկեր պահանջուեցաւ Հնդկաստանի նուիրակ նշանակուելուն առթիւ. Թէպէտև Ջահկեցի կաթողիկոս կը յորդորէր՝ մի բուրեալը ու ջեղֆ-ցէկ մուշդ տանիլ հետը, որպիսի չէր Սիմէոն, կերպարանքով ոչ գեղատեսիլ, և մօրուքով յոյժ աղքատ, որուն համար Քոչ մակդիր անուն ստացած էր, հայերէն՝ արու այծ, կամ տաճկերէն՝ Թէքէ բառին իմաստով։ Յարութիւն Ջուղայեցին Հնդկահայերու փափաքը լրացնելու համար պատրաստուած էր Սիմէոնի վրայ քահանայական ձեռնադրութեան և օծման հանդէս կատարել 1743 Խաչվերացին, որ կը հանդիպէր սեպտեմբեր 11'ին, երբ տօնին նախընթաց դուրբուն օղլը, սեպտեմբեր 9'ին, յանկարծամահ կը վախճանի, և տեղական քահանաներ կ'ամբաստանուին թէ Բօնամուրէցին, վախնալով որ ձեռնադրութեան պատճառով չէօմօճ կը չի-նէն օփղնաջան օփրէց (Դիւ. Գ. կե)։ Սիմէոն սարկաւագ մնալով ալ՝ Հնդկաստանի նուիրակութիւնը չարունակեց եպիսկոպոսին փոխանորդելով, և երեքուկէս տարի Հնդկաստանի մէջ շրջեցաւ։ Ջուղայի կողմերն ալ պտտելով Էջմիածին կը դառնայ 1747'ին, երբ Ղազար Ջահկեցիի դէմ հակառակութիւններ զօրացած էին (§ 2024)։ Հնդկաստանցիք խնդրած էին կաթողիկոսէն որ Սիմէոնը վարդապետութեան բարձրացնելով նորէն իրենց դարձնէ. կաթողիկոսը ընդունեց առաջարկը, նկատի առնելով Սիմէոնի տաստ և կամակատար արդիւնաւորութիւնը, ինքն անձամբ ձեռնադրութիւնը կատարեց, բայց Հնդկաստան դարձնելու պայմանը չգործադրուեցաւ։ Սիմէոն յարեցաւ Ջահկեցիի դէմ ելլող միաբանութեան, և ինքն էր որ պէտք եղած գիրերն ու տեղեկագիրները կը պատրաստէր։ Քիւթիւրի կաթողիկոսանալուն ալ օգնեց 1748'ին (§ 2025)։ Հետեւաբար երբոր Ղազար վերադարձաւ 1749'ին (§ 2028), Սիմէոն Կարին ապաւինեցաւ, և որովհետեւ Ղազար կ'աշխատէր կուսակալին ձեռքով Սիմէոնը իւր ձեռք անցընել, և իրեն դէմ գրիչ շարժող եպիսկոպոսները կոտրել, Սիմէոն Կ-Պոլիս անցաւ, ուր լաւ ընդունելութիւն ալ գտաւ, իւր ուսումնական համբաւին համար (Դիւ. Գ. հա.)։

**Կ-ՊՈԼՍՈՅ ՄԷՋ**

**2071**. Սիմէոն Կ-Պոլսոյ մէջ մնաց բաւական ժամանակ, և կը յիշուի թէ Գալաթի Ս. Հրեշտակապետ եկեղեցիի Քարաքէօյ խըցամ, այսինքն է կամարակապ սենեակին մէջ, հաւակաւոր աշակերտներու Պորփիւրի և Անյաղթի իմաստասիրական գիրքերէն կը դասախօսէր։ Թէպէտ Ղազար Ջահկեցի 1751'ին մեռած էր (§ 2034), և Սիմէոնը հալածող այլեւս չկար, և Մինաս կաթողիկոսէ կասկածելու տեղի չունէր, բայց Սիմէոն Կ-Պոլիսը չէր թողուր, թերեւս յուսալով յաջող յառաջդիմութիւն գտնել այստեղ, ուր իրեն հովանաւոր ունէր հռչակաւոր և ազդեցիկ Եաղուպ ամիրան (§ 2036)։ Անոր ընկերացաւ ալ Երուսաղէմի ուխտաւորութեան ատեն 1751'ին, և իւր քաջաքարոզ ատենաբանութեամբ Նալեան պատրիարքը զարմացուց, որ մինչև իսկ իւր փիլոնը, մատանին ու գաւազանը նուիրեց Սիմէոնի (Դիւ. Գ. հբ)։ Այդ առթիւ կը պատմուի Նալեանի հռչակաւոր խօսքը, որուն երբ ուխտաւորները կը դիմեն, որ յաղթանդամ և մեծ մօրուք Մովսէս վարդապետը իրենց քարոզելու արտօնէ, Նալեան ընդհակառակն Սիմէոնը ցոյց կուտայ ըսելով. Քօչօղ կ'ուզէք՝ Քէօսէ, Ճօրան կ'ուզէք՝ Մօսէ (Դիւ. Գ. հգ)։ Սիմէոն Եաղուպի և Նալեանի հետ Երուսաղէմէ դարձաւ 1752'ին, բայց Նալեանի Կ-Պոլսոյ պատրիարքութեան մէջ վերահաստատուելուն և Եաղուպի գլխատուելուն վրայ, Սիմէոն Կ-Պոլիսը կը թողու և Էջմիածին կը հասնի, ամենայն հաւանականութեամբ, Աղեքսանդր Բիւզանդացիին ընկերանալով 1754'ին սկիզբները (§ 2041). և անկէց ընդունած կ'ըլլայ եպիսկոպոսական

ղաքներուն կողմէն (ԴԻԻ. Գ. 6), և կաթողիկոսին կողմէն ալ բազմաթիւ յանձնարարագիրներ գրուեցան Կ-Պոլսոյ գլխաւորներուն (ԴԻԻ. Գ. 12), և Զմիւռնիոյ նշանաւորներուն (ԴԻԻ. Գ. 13), որպէսզի Տաճկահայոց հաւանութիւնը դժուարութեան չհանդիպի։ Այդ գիրերն ալ Գրիգոր Սանահնեցի վարդապետին ձեռքով նուիրակներուն հետ ճամբայ հանուեցան (ԴԻԻ. Գ. 7)։ Սիմէոնի Ցիշատակարանը այդ գիրերուն ամփոփումը չտար, վասնզի դեռ Սիմէոն Ցիշատակարանը կազմել սկսած չէր։ Բայց ուրիշ տեղէ կը ծանուցուի, իբր թէ Սիմէոն սիրտերը շահելու համար գրած ըլլայ, թէ [illegible] (ԶԱՄ. Գ. 872), որ եթէ ուղիղ է՝ չատ տկար չքմեղանք մըն է, մինչեւ իսկ դժուար է Սիմէոնի բնաւորութեան պատշաճեցնել։ Ուղեւորներուն Կարինէ հեռանալէն ետքը Սանահնեցի վարդապետը, պահ մը ետեւ մնալով և աւազակներու հանդիպելով կը թալանուի, որոնք [illegible], և հազիւ Սանահնեցին պատուածներէն քիչ մը բան հաւաքելով, Ցարութիւն Բասենցի նուիրակին կը յղէ, որ յառաջացած էր դէպի Եւդոկիա, և ինքն ետ կը դառնայ (ԴԻԻ. Գ. 7)։ Բայց Շամախեցիին մահուան գոյժը և Երեւանեցիին ընտրութեան լուրը պաշտօնագիրներէն առաջ Կ-Պոլիս կը հասնին, և աւագանիէն մաս մը դիմադրութեան կը գրգռեն, Սիմէոնի անձնական հանգամանքներուն, և առանց իրենց հաւանութեան օծուած ըլլալուն պատրուակներով։ Սակայն մեծագոյն և խոհականագոյն մասը հաւանելու և ընդունելու կողմը կ'ըլլայ. Նալեան պատրիարք ալ իր հեղինակաւոր ձայնը կը բարձրացնէ, և Վարագայ խաչի կիրակէին 1763 սեպտեմբեր 28'ին, ինքն Նալեան [illegible] Սիմէոն կաթողիկոսին, զոր ամէնքը [illegible]։ Իսկոյն շնորհաւորական պաշտօնագիրներ ալ պատրաստեցին և ճամբայ հանեցին, որոնք [illegible] Էջմիածին (ԴԻԻ. Գ. 12)։ Այսպէս Սիմէոն ընտրութենէն հազիւ ութն ամիս յետոյ կրցաւ հանդարտ սրտով իր կաթողիկոսութեան վրայ վստահիլ, և Տաճկահայոց հաստատութիւնը ընդունելով, ձեռնարկել իր համարձակ գործունէութեան։

2074. Բայց այդ միայն չէր Սիմէոնի կաթողիկոսութեան առջի օրերուն տագնապը։

**ԲԱԳՐԵՒԱՆԴ ՔԱՇՈՒԻԼԸ**

Ընտրութեան վրայ երկու ամիս անցած չէր տակաւին, որ Հիւսէյին-Ալի Երեւանի խանը լուր կ'առնէ թէ Քէրիմ խան (§ 2066) իր վրայ կու գայ, ամէն կողմ աւերելով և աւարելով։ Ուստի պատգամ կը ղրկէ Սիմէոնի, որ թշնամւոյն ձեռքը չիյնալու համար, բոլոր թանկագին սպասներով և բաւականաչափ պաշարով Երեւան գայ, ու բերդին մէջ ապահով մնայ։ Սակայն Հիւսէյին-Ալիի ներքին միտքը կասկածոտ էր կաթողիկոսին վրայ, թէ մի գուցէ Քէրիմին օգնէ. և Սիմէոն ալ բնաւ չէր ուզեր անոր ձեռքը յանձնուիլ, ուստի [illegible] ժամանակ այդ անորոշութեանց մէջ [illegible] կը մնար։ Բարեբախտաբար Վրաց Հերակլ թագաւորին միջամտութեամբ, Հիւսէյին-Ալի իր առաջարկէն ետ կեցաւ, և հաւանեցաւ որ միաբանները Էջմիածին մնան, և կաթողիկոսն ալ իր ապահովութեան համար [illegible] Օսմանեան հողը անցնի, [illegible], որ է Բագրեւանդի Ս. Ցովհաննու վանքը, ինչ որ մեծ ուրախութիւն պատճառեց. իբր զի յիշատակագիրին խօսքով, [illegible]։ Ըստ այսմ Սիմէոն գլխաւոր միաբաններով Պայազիտի կողմը անցաւ 1763 յուլիսի մէջ, և հոն լսեց Սանահնեցի Գրիգորի կողոպտուելուն և պաշտօնագիրներուն կորսուելուն գործը, և իսկոյն սկսաւ նորեր պատրաստելու հոգալ, և Կարնոյ նուիրակ Պետրոս Գետնջեցիի ալ հրահանգներ տալ, թալանը ձեռք ձգելու համար։ Բայց աթոռէն դուրս դիւրութիւններ կը պակսէին, և ահա այս միջոցին լուր կը հասնի Հիւսէյին-Ալի խանէն, թէ [illegible], և թէ [illegible]։ Ասոր վրայ Սիմէոն և ընկերները Ուչքիլիսէի վանքէն Պայազիտ կու գան, կուսակալ Մահմուտ

փաշայէ քանի մը օր կը պատուասիրուին, եւ սեպտեմբեր 20'ին Պայազիտէ մեկնելով, Ս. Գէորգայ կամ Վարագայ չաբաթապահքին բարեկենդանին, սեպտեմբեր 21'ին, Էջմիածին կը մտնեն։ Սիմէոն խնկոյն կորսուած թուղթերուն պակասութիւնը լրացնելով, սեպտեմբեր 28'ին փայեկը ճանպայ կը հանէ՝ Յարութիւն Բասենցի նուիրակին հասցնելու Եւդոկիա։ Սիմէոն կը փութար որպէսզի օր առաջ Կ-Պոլսոյ եւ Տաճկահայոց հաւանութեան գործը վերջանար, բայց բարեբախտաբար միեւնոյն սեպտեմբեր 28'ին օրը ամենայն ինչ վերջացած էր Կ-Պոլսոյ մէջ, ինչպէս տեսանք (§ 2073), բայց այն ատեն օրը օրին լուր առնալու միջոցները կը պակսէին։ Նոյն իսկ Երեւանի խանին պաշտօնական այցելութիւնը յետաձգած էր Սիմէոն Կ-Պոլսոյ թուղթերուն հոգածութենէն, եւ փայեկը ճանպայ հանելէն ետքը, սեպտեմբեր 29'ին երկուշաբթի օր կ'երթար ի Բերդն Երեւանի, ի տես խանին (Դիւ. Գ. 20)։

**2075**. Սիմէոն կաթողիկոս հազիւ Պայազիտի պանդխտութենէն դարձած, հիմնական կերպով կը ձեռնարկէ Մայրաթոռոյ մէջ կարգուսարք հաստատել, եւ իբր առաջին քայլ ոյժ կու տայ արձանագրութեանց եւ յիշատակագրութեանց, որք կը ծառայեն թէ գործունէութեանց կանոնաւորութիւն տալու, եւ թէ եղելութեանց նպատակն ու յիշատակը պահպանելու։ Գրութեանց պակասութեան ձախորդ հետեւանքը մենք իսկ տեսանք, ամենակարեւոր խնդիրներու մասին ստուգապատում յիշատակներ չգտնելով։ Այս պարագան նոյն միջոցին ալ զգալի եղած էր, վասնզի ոչ միայն իրենցմէ առաջ յղուած թուղթերուն մասին՝ ո՛ւր եւ ե՞րբ եւ ի՞նչ գրուած ըլլալը չէին գիտեր, այլեւ ոչինչ գիտէին զբերանագիրսն, զբողոքագիրսն եւ զայն որ գրելոց կարգաւորելոց եղելոց, որք Սահմնեցիին վրայէն կողոպտուեցան, որպէս զի ըստ այնմ նորեր գրէին (Դիւ. Գ. 10)։ Սիմէոնի այս առթիւ հաստատած արձանագրութիւնները եղան հետեւեալները։ Նախ Գրանդամատեան մը, զոր կանուխէն հաստատած էր Շամախեցին (§ 2067), բայց ընդհատուած ըլլալուն համար Ղուկիանոս Աչտարակեցի դպիրին պաշտօն տրուեցաւ զայն շարունակել։ Առանձինն նուիրակութեանց մասին տեղեկութիւններ հաւաքելու գործը յանձնեց Երեմիա նոտարին, որ նշանակէ իւրաքանչիւր թեմին նուիրակը, անոր արդիւնաւորութիւնը եւ զանազան խնդիրները։ Յայտնի չենք գտներ թէ նուիրակութեանց կանոնագիր մըն ալ կազմած ըլլայ Սիմէոն, որ այդպիսի կարգապահութեանց նախանձայոյզ էր. զուցէ Եփրեմ Ձորագեղցիի օրով կազմուած՝ Շարակարգեան ցուցակ գաւառաց եւ գիւղօրէից անունով նուիրակաց կանոնագրութիւնը (Դիւ. Գ. 808-824), Երեւանեցիէ մնացած սկզբնագիրի մը հետեւողութեամբ պատրաստուած ըլլայ։ Ասոնցմէ աւելի կարեւոր կրնայ նկատուիլ Յովհաննէս Գեղամացի դպիրին ձեռքով պատրաստուած Յիշատակարանը, որուն մէջ ժամանակի կարգով նշանակուած են ստացուած եւ գրուած թուղթերը, պատշաճ տեղեկութեանց եւ բացատրութեանց յաւելուածներով՝ որեւէ վերջերս լոյս տեսաւ Գիւտ Աղանեան աւագ քահանայի հրատարակած՝ Դիւան Հայոց պատմութեան հաւաքածոյին կարգին։ Այս յիշատակարանին յարակից է Մեծ տետր կոչուածը, որ յառաջ Յակոբայ Շամախեցւոյ կոնդակներն ունի, եւ որուն մէջ ամբողջապէս կ'ընդօրինակուէին կարեւորագոյն գիրերը։ Առաջին տումարին աւարտելէն ետքը սկսուած պիտի ըլլայ Մեծ տետրն (Դիւ. Գ. 36), որ Բոլորագրեան համար տետր ալ կոչուած է (Դիւ. Գ. 64)։ Այս վերջիններուն մասին տեղեկութիւն եւ ծանօթութիւն՝ չունինք։ Յիշուած արձանագրութիւնները սկսած են 1763 սեպտեմբերի վերջերը, Իւչքիլիսէէ դառնալէն ետքը, եւ շարունակած են մինչեւ 1776 (Դիւ. Գ. եւ Դիւ. Ը.), եւ մենք ալ պիտի օգտուինք անոնցմէ։

**2076**. Երբոր Սիմէոն նոր եւ առօրեայ գործերուն արձանագրութիւնը իւր պաշտօնեաներուն կը յանձնէր, կարեւորագոյն աշխատութիւնը իրեն կը պահէր, այն է հին պաշտօնագիրները հաւաքել եւ պրպտել, եւ Մայր աթոռին ստացութեանց եւ իրաւանց, կալուածոց եւ ընչից վիճակը ճշդել, անոնց վաւերական ցուցակը կազմել, եւ իւրաքան-

ԴԻՒԱՆԱԿԱՆ ԿԱՐԳԵՐ

ՋԱՄԲՌԻ ԿԱԶՄՈՒԹԻՒՆ

*չիւրին վրայ կարեւոր տեղեկութիւններ ու բացատրութիւններ տալ։ Այդ պրպտումները անմիջապէս սկսաւ Պայազիտէ դառնալէն ետքը, ծակուծուկէ դուրս հանեց փոշիներու ներքեւ մոռցուած կոնդակներ և հրովարտակներ, մուրհակներ և կալուածագիրներ. զանոնք դասաւորեց և յատուկ տոմարի անցընել տուաւ. և երբոր ատաղձը պատրաստեց, սկսաւ գրել անոնց մասին բացատրական հատորը։ Այդ է Սիմէոն Երեւանեցիի Ջամբռ կոչուած գիրքը, որ է Յիշատակարան արձանագրացն, հայելի և պարունակող բնաւից իրողութեանց սրբոյ աթոռոյս և շրջակայ վանօրէիցն, համադրեցեալ և շարադրեցեալ ի Սիմէոնէ ցաւահար և վշտակոծ կաթողիկոսէ։ Այդ աշխատութեանց վրայ 1765 թուականն է դրուած, առանց ճշդելու թէ սկզբնաւորութեան, թէ ոչ աւարտման թուականն է. ամէն առթի մէջ չատ ուշացած չըսուիր, եթէ ամբողջ 1764 տարին պրպտումներու նուիրուեցաւ։ Ջամբռ անունը, նոյնիսկ գաղղիերէն* Chambre *բառն է, որ կը նշանակէ սենեակ իւր սովորական իմաստով, սակայն նախընթաց դարերու մէջ սենեակ կը կոչուէին Եւրոպիոյ պաշտօնական դիւանները, և դեռ այսօր ալ* Camera apostolica, *Առաքելական սենեակ կը կոչուի Հռոմի պապական դիւանը։ Սիմէոն հարկաւ այդ անունը լսած է Կ-Պոլիս գտնուած և Եւրոպացւոց հետ շփում ունեցած միջոցին, և իբրեւ Եւրոպական կատարելագործեալ ձեռնարկ մը՝ այդ անունը տուած է իւր աշխատութեան, որ պարզապէս Դիւանագիր կամ Դիւանական արձանագիր մըն է։ Ջամբռը երկար տարիներ անյայտ մնացած ըլլալէ ետքը, 1873ին հրատարակուեցաւ Էջմիածինի տպարանէն։ Սիմէոն իւր գործին չարունակութիւնը կը յանձնարարէ իրեն յաջորդներուն, զի և գործ զոր յետ եղելոյն ի սմա գրեալ է յետագայ տեղւոյն արձանագրացն* (ՋԱՄ. 4)։ *Բայց Էջմիածինի դիւանը կը վկայէ, թէ ոչ ոք հոգացեալ է արձանագրել զեր ինչ* (ՋԱՄ. –.), *ինչ որ Սիմէոնի գովեստը կը բարձրացնէ։ Միայն ցրիւ պատճէններ կը գտնուէին, մինչեւ որ Էջմիածինի մէջ միայն Սինոդի հաստատուելովը, կանոնաւոր ատենագրութիւններ ալ սկսան, և կաթողիկոսական դիւան կազմուեցաւ։*

**2077.** *Սիմէոնի Ջամբռին առաջին երեք գլուխները չատ համառօտ ամփոփում մը կը պարունակեն Հայոց եկեղեցւոյ պատմութեան՝ մինչեւ Մովսէս Տաթեւացին* (ՋԱՄ. 6-20)․ *իսկ չորրորդ գլուխին մէջ զատ զատ կը խօսի յաջորդներուն վրայ՝ Մովսէս Տաթեւացիէ մինչեւ Յակոբ Շամախեցի* (ՋԱՄ. 21-33), *որուն վերջը համառօտութիւն մը կը դնէ կաթողիկոսներու թիւերուն և տարիներու տեւողութեան։ Կաթողիկոսներուն թիւը Լուսաւորիչէ մինչեւ Բարսեղ Անեցի, կը դնէ* 61, *Գրիգոր Պահլաւունիէ մինչեւ Յովսէփ Սսեցի* 27, *և Կիրակոս Վիրապեցիէ մինչեւ Յակոբ Շամախեցի* 39, *որ է բովանդակ* 127։ *Իսկ մեր դասակարգութեամբ Շամախեցին 114րդն է չարքին մէջ, որովհետեւ քանիները ցուցակէ հանած ենք՝ իբր անստոյգ կամ աթոռակից կամ հակաթոռ։ Տարիներու տեւողութիւնն ալ Լուսաւորիչէ Բարսեղ Անեցի կը հաշուէ* 812, *Գրիգոր Պահլաւունիէ մինչեւ Յովսէփ Սսեցի՝* 325, *և Կիրակոս Վիրապեցիէ մինչեւ Յակոբ Շամախեցի՝* 322, *բովանդակ* 1459 *տարի* (ՋԱՄ. 33)։ *Լուսաւորիչի կաթողիկոսութիւնը և Մայրաթոռի հիմնարկութիւնը կը դնէ 305ին* (ՋԱՄ. 6)․ *մինչ մենք ձեռնադրութիւնը 302ին* (§ 63), *և հիմնարկութիւնը 303ին ցուցուցինք* (§ 66)։ *Յատուկ հատուած մը բացուած է՝ Վասն Սիմէոն կաթողիկոսի* (ՋԱՄ. 33-44), *բայց ան պէտք չէ իւր գրիչէն ելած ըլլայ։ Վասնզի նա որ յառաջաբանին մէջ կը խոստովանի թէ ըսկ և էր անարժան կաթողիկոս մըն է, յամենայնի անարգելի և անօգուտ, որ չէ կրցած ինքն իրմէ ուրբ-լեսատր գործ ինչ յառաջացուցանել* (ՋԱՄ. 2), *չէր կրնար իրեն համար գրել, թէ էր այր շնորհալի, ատարակ, գէտնալի, չէ ի մատենաբան, ... տեղեակ ... և նոր կտակարանց, վարժ ներքին և արտաքին գրոց* (ՋԱՄ. 33), *բարեպաշտ, զուարթ և համբերող, ներող և անյիշաչար, կենցաղէր և քնալի, ողորմած և ... ; անընչասէր և աղքատասէր* (ՋԱՄ. 34), *արդարասէր* (ՋԱՄ. 35), *բարեմիտ, ահարկու, ... * (ՋԱՄ. 36), *բազմահանճար* (ՋԱՄ. 28), *և բարեխնամ* (ՋԱՄ. 39), *և դեռ ուրիշ չատ ձիրքերով ճոխացած։ Իրաւ ուրիշ անց մըն*

ալ յիշատակութիւն մը կայ՝ ամ ՌՃԼԳ, շնորհալեօք և պերճիմաստ, փեսայն Սմբատ տանուտէրութեան վարդապետին Երևանցւոյ (ՋԱՄ. 28), սակայն սա ուրիշ Սիմէոն Երևանեցի մըն է (§ 1942), զոր պէտք չէ կաթողիկոսին հետ շփոթել (ԴԻՒ. Գ. հը.)։ Հետևապէս պէտք է ըսել թէ Սիմէոնի մասին հատուածը ուրիշ գրիչէ Ջամբռին մէջ մուծուած է։

**ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՄԱՍԸ**

**2078.** Պատմական մասը փակելով, Ջամբռ կը սկսի վիճակագրական ծանօթութիւններ տալ։ Հայաբնակ տեղերը կամ առաջնորդական վիճակները նուիրակական շրջանակներու բաժնուած են, որոնց քաղուածը օգտակար կը սեպենք ժամանակին կացութեան վրայ գաղափար կազմելու համար։ Տաճկահայ վիճակներ 10 նուիրակութեանց բաժնուած են, և են. 1. Կ-Պոլիս, մայրաքաղաքը իւր շրջականներով։ 2. Ադրիանուպոլիս, որուն մէջ են Ադրիանուպոլսոյ, Ռոտոսթոյի, Պրուսայի, Պանտրմայի, Քէօթահեայի, Պիլէճիկի, Եալովայի և Նիկոմիդիոյ վիճակները։ 3. Խրիմ, որուն հետ են Բեսարաբիա, Վալաքիա, Մոլտաւիա և Պուլկարիա։ 4. Եւդոկիա, որուն մէջ կը մտնեն Արաբկիրի, Ակնայ, Սեբաստիոյ, Կեսարիոյ, Եօզղատի, Ամասիոյ և Ճանիկի վիճակները։ 5. Անկիւրիա, որ կը պարունակէ Աֆիոնգարահիսարի, Գոնիայի, Գարամանի և Պուրտուրի գաւառները։ 6. Կարին, և 7. Կարս, որոնց սահմանները որոշուած չեն Ջամբռի մէջ, այլ Ցիշատակարանին մէջ կը գտնենք, թէ Կարին կը պարունակէ, Բասենի, Դերջանի, Երզնկայի, Կամախի, Ղուզիջանի, Շապին-գարահիսարի, Թամզարայի, Տրապիզոնի, Սիւրմէնէի, Կիւմիւշխանէի, Սպերի, Քղիի, Խոտորջուրի, Օլթիի, Նարմանի և Ալաշկերտի վիճակները։ Իսկ Կարսին ներքեւ են, Կաղզուան, Ախլցխա, Ախալքալաք, Արտանուճ, Արտահան, Արդուին, և Չըլտըր (ԴԻՒ. Գ. 800)։ 8. Պայազիտ, որուն սահմանները վերիվերոյ կը համեմատին այժմեան համանուն նահանգին։ 9. Վան, և 10. Տիարպէքիր, սոնց ալ սահմանները ցուցուած չեն Ջամբռի մէջ, բայց Ցիշատակարանը Տիրապէքիրի ներքեւ կը դնէ, Բալու, Խարբերդ, Արղնի, Չարսանճաք, Չմշկածագ, Ջնքուշ, Սեւերեկ, Ուռհա, Կարմունջ, Մէրտին, Մուսուլ, Հզու և Էկիլ։ Իսկ Վանին ներքեւ կը դրուին, Բաղէշ, Մուշ, Խօշապ, Բերկրի, Արճէշ, Արծկէ, Խլաթ, Կարճկան, Նորտուզ և Ապաղա (ԴԻՒ. Գ. 80)։ Ջամբռի մէջ պարունակուած տեղագրութիւնը՝ որոնց որ շրջանակը ցուցած է, գիւղերու անուններն ալ կ'աւելցնէ, որոնք օգտակար կ'ըլլան հայաբնակ տեղերը ուսումնասիրողին. զորօրինակ միայն Պայազիտի ներքեւ 140 անուններ կը գտնենք նշանակուած։ Պարսկահայք 4 նուիրակութիւն կը կազմեն, Ասպահան, Դավրէժ, Նախիջեւան և Երեւան, բայց սահմանները գծուած չեն Ջամբռի մէջ, այլ Ցիշատակարանը կը մանրամասնէ, և կը յիշուին իւրաքանչիւր նահանգի ծանօթ շրջականները (ԴԻՒ.Դ.803)։ Նուիրակական շրջանակներէ դուրս առաջ բերուած են փէրտնէ վիճակներ, որոնց մէջ նուիրակութեան արդիւնքներու հետ առաջնորդութեան արդիւնքներն ալ Մայրաթոռի կը պատկանին, և են. 1. Զմիւռնիոյ վիճակը Արշիպեղագոսի կղզիներով։ 2. Պաղտատի և Պասրայի վիճակը, Հնդկաստան ու Չինու երկիր, և Պաթաւիա ու Մանիլա միասին։ 3. Գիլանի երկիրը։ 4. Տփղիս, և բոլոր Վրաստան։ 5. Հաշտաշխան, որուն մէջ կը պարունակուին Պետրբուրգ, Մոսկուա, Մոզդոկ, Նոր-Նախիջեւան և Օսմանցիներէ առնուած Խրիմի մասը։ 6. Էջմիածինի յատուկ տէրունի գիւղեր, որք են, Վաղարշապատ, Եղուարդ, Օշական, Ալիբէկլու, Դողս, Փարաքար, Գէօկղումպէթ, Կուակերտ, Արպաս, Քեալարայ, Սուրմարի, Կողբ և Ալէթլու։ Նուիրակութեան արդիւնքները երեք տարին անգամ մը կը գանձուէին, բայց քանի մը տեղեր, դրամէ զատ իւրաքանչիւր տարի իւղ և պանիր և մատաղցու և ուրիշ պտուղներ կու տան եղեր, և սոնք ալ են, 1. Պայազիտ, 2. Վան, 3. Կարս, 4. Գեղարքունի, 5. Լօռի, 6. Տփղիս, 7. Նախիջեւան, 8. Դավրէժ և 9. Գեանջայ իրենց շրջանակներով։ Այս վիճակագրական տեղեկութիւնք կը կազմեն երեք գլուխներ հինգերորդէ սկսելով։ Յաջորդ երկու գլուխներն ալ նուիրուած են կաթողիկոսական իրաւունքներն և արտօնութիւնները բացատրելու, թէ մինչեւ ո՞ւր յէ է ուրդե՞ւ և այս

աւթիւ խիստ ակնարկներ կան Երուսաղէմի և Կ-Պոլսոյ աթոռներուն՝ [illegible] անուն գործածելնուն դէմ։ Բացատրուած են նաև այցելութեանց և թղթակցութեանց մէջ կաթողիկոսին գործածելիք կամ անոր ուղղուելիք պատուադիր ձևերը։ Վերջապէս տասներորդ գլուխէն սկսելով զատ զատ և պատմականօրէն խօսուած է Աղուանից, Աղթամարի և Կիլիկիոյ կաթողիկոսութեանց վրայ, միշտ անոնց սահմանափակ իրաւասութիւնը և Մայրաթոռոյ բարձր իշխանութիւնը ցուցնելու դիտմամբ։ Մենք առայժմ ասոնց մանրամասնութեանց չենք մտներ, պատմական ոճերնէս չհեռանալու համար։

**ՀԱՍՈՅԹՆԵՐՈՒ ՄԱՍԸ**

2079. Ջամբռի մեծագոյն մասը կը պարունակէ Մայրաթոռի հասոյթներու, կալուածներու, ինչքերու և ապահարկութեանց մասին ընդարձակ տեղեկութիւններ, որք և գործին բուն նպատակը կը կազմեն։ Երեքտասաներորդ գլուխին մէջ յառաջ կը բերուին [illegible], որոնցմէ Մայրաթոռը [illegible], և կը բացատրուին թէ [illegible]։ Այդ գիւղերն են, 1. Վաղարշապատ, 2. Օշական, 3. Ֆռանկանոց, 4. Մաստարա, 5. Քիրագլու, 6. Մուղնի, 7. Տիպակլու, 8. Քէշիշքեանտ, 9. Նորագեղ, 10. Նորք, 11. Եղուարդ, 12. Եայճի և Ամիրին, 13. Մելիքի, 14. Բաթռինջ, 15. Բախենիս, 16. Էսպանիս, 17. Ղարաղօյունլու, 18. Աշտարակ, 19. Աղաւնատուն, 20. Նորագաւիթ, 21. Բիւրական և 22. Հաճիլար։ Չորեքտասաներորդ գլուխը կը բացատրէ [illegible], կամ լաւ ևս ապահարկութեան արտօնութիւնները։ Ցաջորդ գլուխին մէջ մի առ մի կը ցուցուին [illegible]. ուրիշ գլուխ մըն ալ կը բացատրէ [illegible]։ Ցատուկ գլուխի մը մէջ ալամփոփուած են [illegible]։ Նոր գլուխ մըն ալ կը բացատրէ թէ ո՞ր և ո՞ւր են [illegible]։ Այդ ամէն տեղեկութիւնները ճոխացած են կարևոր տեղեկութիւններով, և իւրաքանչիւր կէտի վրայ վաւերագիրներն ալ ցուցուած են, մեծ հաւաքածոյին մէջէն էջերը նշանակելով։ Բսաներորդ գլուխէն սկսելով կը ցուցակագրուին պետական իշխանութենէ առնուած [illegible], կամ պաշտօնագիրներ և հրովարտակներ և հրամանագիրներ, որոնց մասին կը ծանուցանէ թէ [illegible], վասնզի այն գիրերէն, զորս կը յուսայի, կ'ըսէ, դանել, [illegible]։ Այս գրութիւնները կը դասակարգէ, 1. Թագաւորաց Պարսից և բուն իշխողաց շահապնեաց, 2. Պարսկական խանից, չխիպլամաց, և այլոց այսպիսեաց գործակալաց, 3. Օսմանցւոց թագաւորաց, 4. Օսմանցւոց փաշայից և այլոց իշխողաց, և 5. [illegible] կոչուած գրութիւններ, որք են նուիրատուութեանց պաշտօնագիրներ զանազան լեզուներով։ Վերջին գլուխը նուիրուած է [illegible], և այս կարգին կը յիշուին, 1. Գեղարդայ վանք, 2. Հաւուցթառ, 3. Խորվիրապ, 4. Աղջոց վանք, 5. Գետարգել, 6. Կարենու վանք, 7. Մաքենեաց, 8. Խութավանք, 9. Կեչառիս, 10. Հայրեվանք, 11. Շղուանք, 12. Սեւան, 13. Բջնի, 14. Դրչաղ, 15. Գօշ, 16. Տեղեր, 17. Սաղմոսավանք, 18. Յոհաննավանք, 19. Նիգ, 20. Մողնու, և 21. Անանիա առաքեալ։ Այսչափը բաւական ըլլայ փոքրիշատէ գաղափար մը տուած ըլլալու համար Սիմէոնի նշանաւոր աշխատութեան, որով եթէ մէկ կողմէն իւր գործունէութիւնն ու արդիւնաւորութիւնը կը յայտնուի, միւս կողմէն ալ ժամանակին պարագաներուն և Մայրաթոռին կացութեան վրայ գաղափար մը կը կազմուի։

**ՆԱԼԵԱՆԻ ՎԵՐՋԻՆ ՕՐԵՐԸ**

2080. Երբոր Էջմիածինի մէջ Սիմէոնի հայրապետական գործունէութիւնը կը սկըսէր, անդին Կ-Պոլսոյ մէջ Նալեանի պատրիարքական գործունէութիւնը կը փակուէր, թէպէտ տարաժամ, զի դեռ 62 տարեկան էր, և տակաւին արդիւնաւոր գործունէութեան տարիք ունէր։ Բայց ախտ մը չարաչար, [illegible] կոչուած ընդհանուր բառով (ԳԱԼ. 307), զայն կը հիւծէր, որ ժամանակակիցներէն արտաքին երևոյթովը միայն բացատրուած է, թէ [illegible] (ՊԱՍ. 12), որով յայտնի

չէ թէ թոքախտ էր կամ թէ սիրտի ախտ, և կամ ստիտակախտի հետեւանք։ Նալեան օրօրի ոյժերը կը կորսնցնէր, և իզուր օդափոխութեամբ և զգուշաւորութեամբ կ'աշխատէր կազդուրուիլ. գործը չէր լքանէր, և Իւսկիւտարի Երուսաղէմատունը փոխադրուելով, երբեմն երբեմն յետ յառաջ գնայր և բնութեամբ, վասն առողջութեան անձին իւրոյ։ Վերջին զատկի պատարագին, 1764 ապրիլ 11'ին, տեսնուեցաւ որ հազիւ հազ կրցաւ զայն աւարտել ոչ կանգնելով երբեք ի յոտին, և Գրիգոր վարդապետ Պասմաճեան կը վկայէ, թէ երբեք շարժողութիւն չունէր մի տանէն, զի բոլոր օրն ամ մերձ էր էս վասն տկարութեան։ Անկէ ետքն ալ՝ նորէն ձիավարելու դարմանին կը դիմէր, չենք իմանար ի՞նչ և որո՞ւ խորհրդով, մինչեւ որ օր մը՝ ա՛լ ձիու վրան կենալ չկրնալուն, ի վերայ Բեշիկթաշի ծերէն ի վայր և հանգուցին ի մէջ մահճի (ՊԱՍ.14)։ Ասոր վրայ աւագանին ալ յուսահատեցաւ անոր կեանքին վըրայ, և նոր պատրիարքի ընտրութեան պէտքը զգաց։ Նալեանի առաջարկեց, և նոյն ինքն ես հաճեցայ ի խորհուրդս և զիջայ ի կամս նոցին, և իբր իւր յաջորդ ցուցուց Սամուէլ Երզնկացի եպիսկոպոսը, որ Պրուսայի առաջնորդ էր։ Բայց Սամուէլ բնաւ ոչ հաւանեցաւ, և ոչ մի կերպով չուզեց Պրուսայէ հեռանալ և պատրիարքական տագնապին մատնուիլ (ՊԱՍ.14)։ Սարգիս Սարաֆեանի ներբողաբանը կը յիշէ թէ Նալեան Սամուէլէ առաջ Սարգիսի առաջարկած ըլլայ պատրիարքական յաջորդութիւնը, և Սարգիս զայն մերժած ըլլայ (ԳԱԼ.106)։ Սակայն ներբողաբանը կրնար միայն Սարգիսի բերնէն լսած անձնագով յոխորտաբանութիւնները կրկնել, և ոչ իսկութիւնը պատմել։ Սարգիսի ալ Գաղղիոյ և Նէապոլսոյ դեսպանները վկայութեան կոչելը (ԳԱԼ.307), առ առաւելն համէջականաց ծածուկ դարձուածները կրնայ ցուցնել, և ոչ ազգին կամքը, որ կասկածաւոր նկատուած Սարգիսի վրայ երբեք չմտածեց, ինչպէս յայտնի կը տեսնուի Պասմաճեանի մանրամասն և ոչ կասկածելի յիշատակարանէն, ուր Սարգիսի անունն իսկ յիշուած չէ։ Սամուէլի մերժումէն ետքը, ապա յետ այնորիկ դարձեալ զմիտս և զխորհուրդս իւրեանց առ ի տանել ի վերայ միոյ ուխտաւորութեան, կը գրէ Պասմաճեան (ՊԱՍ.15), որ Երուսաղէմի փոխանորդն էր, և թէպէտ նա ալ կամեցաւ խոյս տալ, գլխաւորապէս դեռ եպիսկոպոս չըլլալուն, և Կ-Պոլսոյ մէջ ալ 12 եպիսկոպոսներ գտնուելուն պատճառով (ՊԱՍ.105), սակայն վերջիվերջոյ հարկեցուցին ընդունիլ, յիշելով թէ Յովհաննէս պատրիարքն Ամդեցին ալ, որ է Կոլոտը, ի բազում ժամանակս առանց եպիսկոպոսութեան վարէր զպատրիարքութիւնն (ՊԱՍ.15)։

**2081.** Նոր ընտրութեան հանդիսական և վճռական ձեւ տալու համար, աւագանւոյն խորհրդով մեծ ժողով մը հրաւիրուեցաւ պատրիարքական Մայր եկեղեցին, որ և գումարուեցաւ 1764 մայիս 13'ին, Երեւման խաչի հինգշաբթին, որուն ներկայ եղողներ գրեթէ աւելի էին քան զհազար անձինք (ՊԱՍ.16)։ Ինքն Նալեան ալ Իւսկիւտարէ իջաւ և էր պատգարակաւ (ԶԱՄ.Գ.873), պերճախօս ատենաբանութեամբ յայտնեց իւր հիւանդութիւնը, և յօժարակամ հրաժարականը, և Գրիգոր վարդապետին ընտրութիւնը, և բազմութիւնը տուաւ իւր հաճութեան և ընդունելութեան յայտարարութիւնը։ Պասմաճեան բեմ առաջնորդուեցաւ, Նալեան ծերունին յարեաւ ի յաթոռոյն, ընդ նմին և հասարակութիւնքն, գիրկս արկեալ համբուրեաց, խրատական մըն ալ խօսեցաւ, իւր իսկ մատանին և գաւազանը յանձնեց, և մեծ ողորմութեան թելոյն յետոյ ի վերայ, և նոյն տեղ իւր հրաժարման և Գրիգորի ընտրութեան պաշտօնագիրը գրեցաւ և կնքեցաւ՝ նորընտիրին յանձնեց, և պատրիարքարանէն ելնելով Գումքաբուի Երուսաղէմատունը բնակեցաւ։ Մայիս 14'ին պետական պաշտօնեաներ եկան Նալեանի հրաժարականը իւր բերնէն հաստատել, զի Մուստաֆա Գ սուլտան, զարմացեալ կամաւոր հրաժարականին վրայ, կասկածած էր թէ մի գուցէ բռնութեան բանիւ լինիցի ի մէջ յայսմ գործողութեան։ Մայիս 15'ին շաբաթ օր, Գրիգոր վարդապետ Պասմաճեան արքունի դուռը գնաց, զգեցաւ զխիլայն արքունական, և մայիս 16'ին կիրակի առտու, Մայր եկեղեցի իջնելով իւր առաջին քարոզը խօսեցաւ, յայտնելով շնորհակալութիւնս ի ծերունի հայր պատրիարքէն, և

ԳՐԻԳՈՐ ՊԱՍՄԱՃԵԱՆ

օրհնելով բոլոր ազգը, և շիւքրանլըղըն և մինէթտարլըղըն։ Երկուշաբթի մայիս 17'ին Նալեան ճուլուսունա ըշտահը և ըշտըրաքը, ՚ Էրուսաղէմին համդէրէ գէնայ է յիւսկիւտարտա վանքը, և մենք, կը գրէ Պասմաճեան, ալա չինէ յայնի ոլմադ պարմաղէւ գործով ճէրով (ՊԱՍ. 16-18)։

**2082.** Երկու ամիս եւս ապրեցաւ Նալեան հրաժարականէն ետքը, և այդ օրերուն մէջ, հոգաց իւր ժառանգութիւնը բաժնել, և ըստ ինչ եկեղեցական շուղաւ ժառանգներ, բոլորն ալ ջէտամբ խաբով Բաղչեսը, օճաղը, վանօրէից, եկեղեցեաց և ողջարը։

ՆԱԼԵԱՆԻ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

Իւր դրամական կարողութիւնը հրամայեց որ չահեցնեն, և վերայ եկեալ շահոյն մի մասը յատկացնեն որբ աղջկանց որ են աղքատք, ու է հօգալ շղեոց և շղակատարութեանց ամասնութեան հոգին։ Շահերուն երկրորդ մասը յատկացուց աղքատ և որբ մանկանց ղըշայց, ըէ յրէաբար ընթերցասացնէցեն, և երրորդ մասը վան աղբեր ջուր բերելոյ Իւսկիւտարի Նոր Թաղ կամ Եէնիմահալլէ կոչուած մասին համար, ինչ որ չինուեցաւ յաջորդին հոգածութեամբ։ Բոլոր գիրքերը եւ և պարէեաեաց Գումքարուի պատրիարքական եկեղեցւոյն (ՊԱՍ. 18), որ կազմած է անշուշտ Մայրեկեղեցւոյ գրադարանին գլխաւոր հարստութիւնը, վասնզի գիտենք որ հետամուտ էր գիրքեր հաւաքել, կարդալ, ուսումնասիրել, գրել ու հրատարակել։ Առանց վարանման կրնանք յայտարարել, թէ Նալեան Կ-Պոլսոյ պատրիարքական աթոռին վրայ գրական արդիւնաւորութեամբ և ուսումնական արժանիքով ամէնէն բարձր անձնաւորութիւնն եղած է, ոչ միայն իւր հմտութեամբ և աշխատութեամբ, այլեւ ուսումը տարածելու համար թափած ջանքովը։ Ձի ինքն էր որ հաստատեց Գումքաբուի Մայր-Դպրատունը, որուն Նախաշավիղ եղաւ Նախ՝ սա ինքն մէծ րաբունապետն և աստուածաբան պատրիարքն Բիւզանդիոյ Յակոբ (ՏԱՇ. 118), որ և անձամբ նոյնին մէջ կը դասախօսէր։ Դպրոցին գլխաւոր վարիչն էր Պաղտասար դպիր, որ Նալեանի համահաւասար արդիւնք ունեցած է, կարող աշակերտներ հասցնելով, որոնց կարգէն է Սիմէոն Երեւանեցի կաթողիկոսն ալ (ՍՐՅ. Ա. 77)։ Նալեանի թողած երկասիրութեանց մէջ յիշենք անոնց հրատարակութեան թուականներով։ Վէմ հաւատոյ 1733, Քրիստոնէական 1737, Մեկնութեան Նարեկի 1745, Հոգեշահ 1746, Ճրագ Ճշմարտութեան 1756, Զէն հոգեւոր 1757, Գանձարան ծանուցմանց 1758, Գիրք աղօթից 1760, Յառաջաբան Եզնիկի 1762, և տետրակ մը Զանազանութենէ կենցաղոյ, մահուանէ ետքը հրատարակուած (ՕՐԱ. 145)։ Նալեանի ձեռնասուն աշակերտներուն կարգին յիշուած են՝ վարդապետներէն, Աթանաս, Յովսէփ, Սահակ որ և Ղեւոնդ, Կարապետ Պէպիւրօղլու, Ստեփան Պէյօղլուցի, Յովհաննէս Խոյեցի, Բարսեղ, Գրիգոր Տիվրիկցի, Սարգիս Կեսարացի, և Միքայէլ. իսկ սարկաւագներէն Գաբրիէլ՝ առաջ Պաղտասար, Մխիթար որ և Գէորգ, Մաղաք Պալաթցի՝ վերջէն Բաբաէրբա եղած, Մելքիսեդ Պալաթցի՝ վերջէն ըստ ալխօրհի եղած, Սրբէն Լանկացի, և Գրիգոր Պալաթցի՝ Ուղոկիա վախճանած (ՍՐԳ.)։

**2083.** Նկատողութեան արժանի կէտ մըն է Նալեանի ուղղութիւնը ժամանակին տիրող խնդիրներուն հանդէպ։ Իւր օրով մեծ յուզումներ տեղի չունեցան, և կաթոլիկամիտներու դէմ

ՆԱԼԵԱՆԻ ՈՒՂՂՈՒԹԻՒՆԸ

կարծեցեալ հալածանքներ չեն յիշուիր։ Կոլոտէ ժառանգած խոհական ընթացքը Նալեան չփոխեց, և վայրապար խստութիւններով կացութիւնը չզայրացուց։ Առոր հետ մէկտեղ թոյլ և զիջողական ուղղութիւն ալ չունեցաւ, այլ մանաւանդ ջանաց անոնց ազդեցութիւնը կոտրել, և անոնց ծաւալողական քարոզութեանց արգասաւորութիւնը խափանել։ Նկատելով որ աւելի ուսումնական ձեւով է որ լատինամիտներ կը յաջողին, և դպրոցական նորութիւններով միտքեր կը պղտորեն, և լատինական գիրքերու հետեւողութեամբ կամ թարգմանութեամբ հրատարակութիւններ կը տարածեն, ինքն ալ ջանաց նմանօրինակ զէնքերու ոյժով անոնց դէմ մաքառիլ, և գրեթէ բոլոր իւր երկասիրութիւնները հայադաւան վարդապետութիւնը պաշտպանելու կը ձգտին, սուրբ Գիրքէն և սուրբ Հայրերէն վկայութիւններ լուսաբանելով, և լատինական պատճառաբանութեանց անհիմն կամ սխալ ըլլալը մէջտեղ դնելով։ Այս միջոցը շատ

աւելի ազդեցութիւն ունեցաւ լատինամիտ ճիգերը ամլութեան դատապարտելու, զի ազգային ուղղափառ եկեղեցւոյն հաւատարիմ հաւատացեալներ ձեռուընին փաստեր ունեցան, իրենց եկեղեցին մեղադրողներուն ու պախարակողներուն դիմադրել, և չպարեալ պատճառաբանութիւններէ չգայթակղիլ։ Այդ երեւէն շատ մեծ եղաւ Նալեանի արդիւնքը Հայ եկեղեցւոյ համար, և իրաւամբ արժանի է որ Որոտնեցիէ և Տաթեւացիէ ետքը՝ մեր ուղղափառ սուրբ եկեղեցւոյն բազմերախտ վարդապետներուն հետ յիշուի իւր անունը։ Նալեան իւր այդ ուղղութեամբը զօրացած չքաշուեցաւ մինչեւ իսկ չուրջը պահել Սարգիս Սարաֆեանի նման երկերես եկեղեցականներ, որոնք երբ արտաքնապէս և կատարելապէս հայադաւան պաշտօնէի գործերը կը կատարէին, ներքնապէս և ծածկապէս լատինական մերձաւորութեամբ չահիլ և չահեցնել կը ճգնէին։ Նալեան վախ չունէր այսպիսիներուն մերձաւորութենէն, ընդհակառակն զանոնք իրեն մօտ պահելով, անոնց գործունէութիւնը կը նուազեցնէր, և արտաքինով իրենց ներքինը սանձ կու տար, և ժողովուրդին աչքին անազդեցիկ կը դարձնէր։ Սարգիս Սարաֆեան, որ վերջէն ինքզինքը կատարեալ հռոմէադաւան եղած ցուցնելու պէտքը զգաց, մտերմութեամբ կը յաճախէր Նալեանի մօտ, երբ զի պատրիարքարանի իշխանութեան ներքեւ Ղալաթիոյ քարոզչութիւն կը վարէր։ Իւր գովաբանը կը սիրէ պատմել թէ Նալեանի հիւանդութեան միջոցին Սարաֆեան գայն հռոմէադաւանութեան յորդորած ըլլայ, որով նա հեռացնէ ղանջէն վանդ է մըտա կենի (ԳԱԼ. 106)։ Սակայն այդ պատմութիւնը միայն յետ ժամանակաց Սարաֆեանի ըրած խօսակցութեանց վրայ կը հիմնուի. իսկ ժամանակին անցքերը գրող Պատմաճեան այսպիսի բաներէ տեղեկութիւն չունի, և Պատմաճեանի վկայութիւնն ալ հռոմէադաւաններու համար պէտք չէ կասկածելի ըլլայ։ Մեզի բաւական է որ գովաբանն ալ կը խոստովանի, թէ Նալեան ատնելով գարդախանէր գարճանելով (ԳԱԼ. 106), զոր երկրորդ գովաբանն ալ կ'երկրորդէ, թէ Սարգիս տեսաւ, որ Յակոբ շաշէր որ այդավրան խոստովանէ, ու ըսեց (ԳԱԼ. 306)։

2084. Նալեան անգամ մը Իւսկիւտարէ Կ-Պոլիս իջած էր, թերեւս մօտալուտ Վարդավառին առթիւ, որ յուլիս 18'ին կը հանդիպէր, ասեայն այլ ու կարոց վերատանելով է ասափկաւբնէ տըկարամբեան, և Վարդավառի երկրորդ օրն, յուլիս 19'ին, երեկոյեան դէմ ժամ 11'ին, Սանտերոց շնորհէ հար, Գումքաբուի Երուսաղէմատունին մէջ։ Գերեզմանին վրայ դրուած տապանագիրը, որ կը գտնուի Բանկալթիի գերեզմանոցին մէջ, յուլիս 20 թուական կը դնէ, թաղման օրը նշանակելով, կամ թէ 19'ին արեւու մտնելէն՝ յաջորդ օրը ըսկսելով։ Գոյժը անմիջապէս տարածուեցաւ, և պատրաստութիւններ եղան մեծահանդէս յուղարկաւորութեան համար, որ կատարուեցաւ Մայրեկեղեցւոյ մէջ երեքշաբթի յուլիս 20'ին, իսկ մարմինը Ի ծառ հանդիպի և խորան ամբոխի (ԳԱՍ. 18) փոխադրեցին Պէկօղլու թաղին գերեզմանատունը, և հանգուցին Յակոբ Դ Ջուղայեցի կաթողիկոսի գերեզմանին քովը (§ 1793), ուր կը գտնուի ցարդ, վրան մեծ և փառաւոր գերեզմանաքար մըն ալ դրուած։ Գրիգոր պատրիարք պաշտօնին բերմամբ գլուխ կանգնած էր յուղարկաւորութեան հանդէսին, որուն մասնակցած են Կ-Պոլիս գտնուող 12 եպիսկոպոսները, և վարդապետ պատրիարքը անոնց թողած է եկեղեցական ծիսակատարութիւնները։ Յարութիւն Բաւենցի Նըւիրակ եպիսկոպոսը կատարած է օծումը, և Սարգիս Սարաֆեան եպիսկոպոսն ալ դամբանականը խօսած է Բերայի գերեզմանատան մէջ, Եվըլ է Պէրայ Պօյ Քօրջըրուքըն գէրեզմանըսըրէ։ Այդ դամբանականի պէտքը զգացած է Պատմաճեան, տեսնելով որ Թողմանեան անյանց էր խորտելոյն կորէ Բողոմ յոյժ, անոր համար հրաւիրած է Սարաֆեանը քարոզ մը խօսիլ, է նոյն ղաշն մինչեւ կոտորելոյ կորդ Բաղմանն, գերեզմանին չուրջը համակոտելոյ և համախմբելոյ բազմութիւնը անօրէնացուցանելոյ և ցրուելոյ և հեռացուցանելոյ աշտէ (ՍՐԳ.)։ Այդ պարագային մէջ մենք գըլխաւորապէս կը դիտենք, ոչ Պատմաճեանի յարմար մտածմունքը, և ոչ ալ Սարաֆեանի քարոզի մէջ յաջողակութիւնը. այլ այն ներբողականները, զորս Սարաֆեան խօսեցաւ։

Նալեանը գովելու համար յառաջ բերաւ անոր մեծամեծ ձիրքերը, բացառիկ արժանիքը, գովանի արդիւնաւորութիւնը, և ողբաց այն կորուստը՝ զոր ժողովուրդը կը կրէր զրկուելով յայնպիսի հոգեւոր հօրէ և տեղ հովուէ, յաղագս վարդապետէ և Ներսիսի տարօրէն (ՍՐԳ.)։ Եթէ իր հռոմէադաւան համոզմանց վրայ անկեղծ և հաստատուն մէկ մը եղած ըլլար Սարաֆեան, պիտի չկարենար գովաբան կանգնիլ Նալեանի մը, որ չարունակ հռոմէադաւանութեան դէմ մաքառող և հայադաւանութեան պաշտպան էր կանգնած։ Որ երբեք իր ուղղութիւնը չէր ստած, և որուն հիւանդութեան անկողնին մէջ ալ՝ նոյն Սարաֆեանի, իր խօսքով, բրած յորդորներն արդիւնք չէին ունեցած, և զորս անլսելի առնելով մերժած էր Նալեան։ Հետեւաբար եթէ տանէր Սարգիս ի Նոյն վայրէն՝ ողջերթաբար գնալ յայլ տեղին, ապա իրաւունք չունէր վերջէն Նալեանը մեղադրել, իր կենսագիրին թելադրելով անոր մասին, թէ եղեալ մարդահաճ, որ զսէր փառաց այս աշխարհի, ի վեր դասէր քան զփառս երկնի, զայն հաւանեալ որդւոց թողէ (ԳԱԼ. 107)։ Բայց Սարաֆեանի յեղյեղուկ և երկերես և չահադէտ ընթացքը այլեւս նոր բացատրութեանց չկարօտիր։ Սարաֆեանէ ներշնչուած Նուրտինեանի գրիչին տակ՝ Նալեան կը մեղադրուի իբր աթոռոյն տերէ հասան (ԳԱԼ. 107), և կ'երեւի թէ Սարաֆեանի սիրտին ցաւ եղած էր Նալեանի պատրիարքութեան մէջ 23 տարի մնալը, որով իր ակնկալութիւնները չէին իրագործուած, և ի յաւելուածոյ որոց կազմած է՝ Նալեանի իրեն առաջարկելուն և իր մերժելուն մուրացածոյ դարձուածքները (§ 2080)։

**2085.** Գրիգոր պատրիարք իր պաշտօնավարութեան սկիզբը՝ Սիմէոն կաթողիկոսի հետ ընդհարման մէջ գտնուելու պարտաւորուեցաւ։ Սիմէոն կաթողիկոսի համոզումն էր, թէ բոլոր

ՍԻՄԷՈՆԻ
ՁԳՏՈՒՄՆԵՐ

առաջնորդներ պէտք է Մայրաթոռէն անուանուին, և ուղղակի անոր անսան, և թէ Կ-Պոլիս ալ առաջնորդութենէ մը աւելի չէ։ Սիմէոնի կարծիքով, ամէն Նորոց առաջնորդն միշտ գնալով ի յաթոռակալութենէ յաթոռակալութեան, հեռացեալ ի ճանապարհէն ճշմարտութեան, սկսան պետական հրամանով պաշտօն ստանձնել, և առանց Մայրաթոռի անուանման սպասելու պաշտօն վարել. և որովհետեւ կառավարութիւնը սովոր էր անոնք ծերոց անուանել, սատրէ ի հայրապետութենէ գահակալ եղեալ դատարկել կեալ։ Թէ այդ դրութիւնը յառաջելով, Կ-Պոլսոյ պատրիարքները ոչ միայն իրենք ընդվզեցին, այլեւ ուրիշ վիճակներն ալ, որոնց առաջնորդն բոլ գլխի ի որոյ Էջմիածնէ և ի սա Նորոց կաթողիկոսէն կարգէին, հետզհետէ իրենց իշխանութեան ներքեւ անցուցին, և սկսան իրենք առաջնորդներ անուանել, այնպէս որ վերջիվերջոյ ելեալ ղեկաւր առաջնորդական վիճակին, որք ընդ տէրութեամբն Օսմանցւոց, որքն ի ներքոյ հրամանատարի Օսմանցւոց, քաղ ի յայնոց տեղեաց (ՋԱՄ. 56), որոնք այն ատեն երկուք միայն մնացած էին, Զմիւռնիա և Պաղտատ (ՋԱՄ. 48)։ Սիմէոնի այդ համոզումը, եթէ բացարձակ կերպով և հնաւանդ սովորութեամբ կրնար արդարացի սեպուիլ, սակայն չէր արդարանար պարագաներու փոփոխութեան և Օսմանեան օրէնսդրութեան հոգին ըմբռնելով։ Մահմետական պետութիւնը Կ-Պոլսոյ տիրանալով պարտաւորուած էր քրիստոնէից կացութիւնը ճշդել օրէնքի առջեւ, և անոնց օրինական կացութիւնը կանոնադրել իսլամական դրութեան համեմատ։ Այս բանին լուծումը գտած էր, ազգապետական դրութիւնը ստեղծելով, որով իւրաքանչիւր քրիստոնեայ ազգութեան հոգեւոր պետը գլուխ և պատասխանատու և կարգադրող կը ճանչցուէր՝ նոյն ազգութեան ներքին և կենցաղական և կրօնական կեանքին, և հնար չէր դուրսէն օտար պետի մը ձեռնհասութիւնը ճանչնալ Օսմանեան հպատակ ազգութեան մը վրայ (§ 1486)։ Կ-Պոլսոյ Հայ պատրիարքութիւնը անհրաժեշտ հետեւանք էր այդ օրէնսդրութեան, որ եթէ սկիզբէն աւելի ամփոփ էր, Օսմանեան պետութեան ընդարձակութիւնն ալ նուազ ըլլալուն, սակայն դրութիւնը պիտի ընդարձակուէր Օսմանեան տիրապետութեան տարածուելովը (§ 1487)։ Սիմէոն որ երկար ատեն Կ-Պոլիս կեցած էր, պէտք էր այդ անհրաժեշտ կացութիւնը լաւ ուսումնասիրած ըլլար, և պէտք չէր որ հին ժամանակներու սովորութեան կառչելով, ներկային պահանջը անգիտանար. և երբ կը

պնդէր թէ Կ-Պոլսոյ առաջնորդը ոչ է պատրիարք, պիտի չյայտարարէր թէ [illegible] էին Արտազու և Տաթևի և Բջնիի և Հաղբատի առաջնորդները (ՋԱՄ. 55)։ Սիմէոնի այդ կարծիքներուն մասին անգամ մըն ալ խօսած ենք Կարապետ Ուլնեցիի ընտրութեան առթիւ (§ 1947)։

**ՓՈԽԱՆՈՐԴԻ ԽՆԴԻՐ**

2086. Սիմէոն միայն ներքին համոզմամբ չգոհացաւ, այլ կաթողիկոսական աթոռ բարձրանալէն, Տաճկահայոց հաւանութիւնը առնելէն (§ 2073), և 1764 փետրուար 12'ին, Օսմանեան կառավարութենէն իրեն համար Նալեանի առացած հրովարտակն ալ ձեռք անցընելէ ետքը (ԴԻԻ. Գ. 55), ուզեց Կ-Պոլսոյ պատրիարքութիւնը պարզ առաջնորդութեան վերածել, և կաթողիկոսութիւնը Կ-Պոլսոյ մէջ ուղղակի գործող և ազդութիւնը վարող իշխանութիւն դարձնել։ Այդ նպատակով մտածեց Կ-Պոլսոյ մէջ կաթողիկոսական փոխանորդ մը դնել, նուիրակէն տարբեր, որ երբ նուիրակը լոկ հասոյթներով և նուէրներով զբաղի, փոխանորդը վարչութեան գլուխ կանգնի և պատրիարքին վրայ ալ իշխանութիւն գործածէ։ Այդ մասին իրեն համամիտ և գործադիր գտնուեցաւ Աբրահամ Աստապատցի եպիսկոպոս, որ Զմիւռնիոյ առաջնորդական պաշտօնին շրջանը լրացնելով Էջմիածին դառնալու համար Կ-Պոլիս եկած էր, բայց հեռանալ չէր սիրեր և Էջմիածին փակուիլ չէր յօժարեր։ Պատմիչ մը Աստապատցիին կը վերագրէ Կ-Պոլսոյ մէջ կաթողիկոսական փոխանորդ հաստատելու գաղափարը (ՋԱՄ. Գ. 872), սակայն մենք գիտնալով Սիմէոնի միտքը, աւելորդ կը տեսնենք դուրս թելադրութիւն ենթադրելը, մանաւանդ որ Աստապատցիին խորհուրդը աւելի եկեղեցական գործակալութիւն էր, Երուսաղէմի փոխանորդներուն նման, քան թէ Սիմէոնի խորհած իշխանական ներկայացուցչութիւնը։ Վերջապէս երկուքին միտքերը զիրար կը լրացնէին։ Սիմէոն իր միտքին գործադրութիւնը յապաղեց, նախ որ հազիւ 1764 փետրուարին ստացաւ սուլտանին հրովարտակը, և երկրորդ որ Նալեանի անձը պատկառանք կ'ազդէր իւր վրայ ալ։ Բայց հազիւ թէ իմացաւ անոր մահացու հիւանդութիւնը և գործէ քաշուիլը, պէտք եղած պաշտօնագիրները պատրաստեց և Աբրահամին ղրկեց, և գիրերը հասցէին հասան Նալեանի թաղումէն անմիջապէս ետքը (ՋԱՄ. Գ. 874). միայն թէ այդ գիրերուն մասին ակնարկ չենք գտներ Սիմէոնի յիշատակարանին մէջ։ Գրիգոր պատրիարք պէտք զգաց ժողով գումարել, և Աստապատցին հետամուտ եղաւ համամիտներ պատրաստել, և յաջողեցաւ Արեւելցիներ կոչուած մեծամեծներուն, այսինքն Պարսկահայ գաւառներէ գաղթած վաճառականներուն մէջ։ Սակայն բնիկ Կ-Պոլսեցիներ և Տաճկահայ ամիրաներ հակառակեցան, պատճառելով թէ [illegible], և յայտարարելով թէ պատրիարքը բաւական է Մայրաթոռոյ իշխանութիւնը ներկայացընել։ Թէպէտ ժողովը լուծուեցաւ առանց որոշման, բայց փոխանորդութիւնը չընդունողներ, միանգամ և երկիցս և երիցս ստիպեցին Աստապատցին, որ յօժարակամ մեկնի, և թէ իրենք կաթողիկոսին պէտք եղածը կը գրեն։ Երբոր Աստապատցին կ'ընդդիմանար, և Արեւելցիներու խումբը շփոթութիւններ կը գրգռէր, միւս խմբակը պատրիարքը ստիպեց Աստապատցին հեռացընել, որ արքունի հրովարտակով Էջմիածին ղրկուեցաւ (ՋԱՄ. Գ. 875)։ Հեռացման թուականը նշանակուած է 1764 սեպտեմբեր 29'ին (ՊԱՍ. 19)։

**ՍԻՄԷՈՆԻ ՑԱՒԻԼԸ**

2087. Աստապատցիին հեռացուիլը մեծ նշանակութիւն ունեցաւ Պասմաճեանի անձին և գործունէութեան վրայ. ինքն իսկ զայն բոլոր իւր ձախորդութեանց սկզբնապատճառ կը նկատէ, և աւելորդ չսեպուի, եթէ քիչ մը մանրամասնութեանց մտնանք եղելութեանց ներքինը բացատրելու համար։ Պասմաճեան, իւր յիշատակարանին մէջ Աստապատցիին համար՝ միայն անցողակի կը գրէ, թէ [illegible] Էջմիածին. իսկ պատճառին բացատրութիւնը կը թողու [illegible], միանգամայն յարելով թէ այս պատճառով [illegible] (ՊԱՍ. 19)։ Իրօք ալ մեծապէս սրտմտեցաւ

Սիմէոն, ոչ միայն իր նպատակը մերժուած, այլեւ իր փոխանորդ նշանակած անձը անարգուած, և պատրիարքական առաջարկով ու պետական հրամանով Կ-Պոլսէ հեռացուած տեսնելով։ Ինչչափ ալ մինչեւ ատեն մը իր զայրոյթը զսպեց, և ծայրայեղ որոշումներու չձեռնարկեց, բայց երբեք չկրցաւ մոռնալ կրած ձախողուածը ու անարգանքը, ինչ որ Ջամբռի մէջ գործածուած բուռն լեզուէն ալ կը յայտնուի (ՋԱՄ·56)։ Աստապատցիին հեռանալէն ետքը, Կ-Պոլսոյ մեծամեծներ առաջարկեցին որ ոչ թէ կաթողիկոսական փոխանորդ մը, այլ պարզ կալուածոց հսկող կամ միւթեվէլլի մը գտնուի Էջմիածինի կողմէ, և Սիմէոն զիջաւ այդ պաշտօնին մէջ հաստատել Բարսեղ ծերունի վարդապետը (01 ՕՐԱ·150)․ սակայն կացութիւնը հիմնապէս չբարւոքեցաւ։ Պաամաճեան վերը ակնարկուած պատմագրէն ողջունագիր գրութեան մէջ, զոր ուղղած է առ վեհափառն ընծայողս (ՊԱՄ·98), իրեն անկման հեղինակ կը ցուցնէ ազդեցիկ ամիրա մը, զոր գերերջանիկ և բարեբաստին իշխանազէտ իշխանաց և առաջնորդ ազգին կ'անուանէ (ՊԱՄ·103), և անունը չտար։ Բայց յիշատակարանին ուսումնասիրողը կը հաստատէ, թէ մահտեսի Գասպար ամիրա Մուրատեանն է ակնարկուած անձը (ՊԱՄ·136)։ Պաամաճեան բողոքելով կը յայտարարէ. չէր կայր ի Տէր Էմ և ի Տէր Աբրահամ վարդապետին. և կը յաւելու թէ ամիրան զինք առնելով փորձէ յագուրդ տուաւ խորոց քինախնդիր լինելոյն, որով կ'իմանայ Աստապատցիին գործունէութիւնը Ահագինը տապալելու մասին (§2056)։ Վասն զի Սահակ Կ-Պոլսոյ ամիրաներուն պաշտպանածն էր եղած (§ 2042), որոնք կարծես թէ տակաւին չէին ներած Երեւանեցիին և Աստապատցիին՝ Ահագինը հրաժարեցնելու համար բրած ջանքերնին (ՊԱՄ· 108), և Աստապատցին մերժելով երկուքէն միանգամայն վրէժ լուծել կը խորհէին։ Պաամաճեան մանրամասնելով ամիրային աքսորի գործին մէջ ունեցած դերը կը պատմէ, թէ գիշեր մը ժամ 3'ին իրեն մօտ եկած է առ ի փորձափորձել աքսորման համար ղեկեցելոյ լուրն. թէ նա ինքն խորհուրդ տուած է հրովարտակը ստանալէն ետքը Աստապատցին ճաշի հրաւիրել Իւսկիւտար, և աքսորին վերակացու չավուշն ալ հոն բերելով, ձեռքը յանձնել (ՊԱՄ·107)։ Կերցուր և խմցուր, բաց է ամիրան, և չկայ տուր ի յետոյ տանողին (ՊԱՄ·108)։ Պաամաճեան ալ միամտաբար գործադրած է իրեն տրուած հրահանգը, և կ'աշխատի այս կերպով պատասխանատուութիւնը իրմէ հեռացնել։

2088. Պաամաճեանի վրայ հնար չէ չարգահատել, տեսնելով՝ որ խարդախ հակառակորդներու ձեռք խաղալիք դարձած՝ բարեմտաբար և միամտաբար կը գործէ, և անոնց ձախող հրահանգները կը գործադրէ, և ինքն ալ իր անկման և անարգման գործակից կը դառնայ։

**ՍԻՄԷՈՆ ԵՒ ԳՐԻԳՈՐ**

Սակայն միւս կողմէն պէտք է ըսել, թէ ով որ բարձր և պատասխանատու պաշտօնի մը վրայ կը գտնուի, պէտք է իր անձին և իր գործին խելամուտ տէրն ըլլայ, որպէսզի ոչ ինքն անարգէ և ոչ գործը անարգէ. և չկրնար իր պատասխանատուութիւնը վարկապարազի պատճառանքներով թօթափել։ Բարեմտութեան գովեստը չենք ուրանար, բայց պէտք չէ զայն մղել մինչեւ այն կէտը, որ ինքզինքը ցուցնէ ի յամենայն կողմանց բոլոր և շուրջ, տարէ և խեղճ, ինչպէս Պաամաճեան կը խոստովանի եղած ըլլալ։ Կը յարէ խակ, թէ ի յամենայն գործողութեան իմ առնէ չարաչար ընմանէ, վերոյիշեալ ամիրայէն, որ բոլոր խորոց դիտման կամեր ընել փորձել առնել ի յետին խորոյ (ՊԱՄ·101)։ Անեղծուածային ըլլալու չափ անբացատրելի կը դառնայ Պաամաճեանի պաշտօնավարութիւնը, երբոր կը տեսնենք, որ այսչափ տկար և երերուն ըլլալով մէկտեղ, գրեթէ 10 տարի աթոռին վրայ կը մնայ մինչեւ 1773. ոչ մեծամեծներ և ոչ ազգը կ'ուզեն զայն տապալել, և ոչ ինքը հաստատամիտ զգուանքով մը կը խորհի դժուարին կացութենէն զատուիլ։ Պաամաճեան չուզելով ալ ցուցուցած էր Սիմէոն կաթողիկոսը, սակայն բարեբաղդաբար Սիմէոն չուշուլ իմացաւ թէ, Պաամաճեան իր գործերուն նախապատճառը և անկախ հեղինակը չէր, և չուզեց իր հակառակութիւնը յառաջ վարել մինչեւ վերջին ծայրը։ Պաամաճեանի կացութիւնը ակարայինով պատճառներուն գլխա-

*ւորներէն մէկն ալ եպիսկոպոսական աստիճանն էր, որով ստորնագոյն դիրք մը ունենալ կը նկատէր, բազմաթիւ եպիսկոպոսներու հանդէպ, որոնք մայրաքաղաքին մէջ կը գտնուէին։ Նոյնիսկ ընտրութեան ատեն այդ պարագան նկատի առնելով, Պասմաճեանի խոստացուած էր, «զայդ հոգսդ մեք կրեմք, դու ամենեւին հոգ մի առներ, միայն թէ դու այժմ ի յանձն առ զայս գործ և զշփոթսն» (ՊԱՍ. 117). բայց երբոր Պասմաճեան Էջմիածին երթալ ուզեց, ամիրան «ընդդիմացան յոյժ խորհրդոյ», անպատշաճ ցուցնելով Օսմանեան պետութեան պատրիարքի մը օտար տէրութեան երկիրն երթալ (ՊԱՍ. 117)։ Այս պատճառով մեծամեծներու բերնէն գրուեցաւ կաթողիկոսին «ամբաստանեալ, չխնդրել և չհարկել զայն ի սուրբ աթոռն Էջմիածնի տալ, ցուցանելով ինքեան անկարելի, վասն լինելոյն հրամանաց և ֆերմանաց թագաւորին»։ Սիմէոն նկատելով որ պատճառը «յերկրէ էր եկ» (ԴԻԻ. Գ. 404), 1765 սեպտեմբեր 10՚ին, խաղաղութեան և հաշտութեան հրաւէր կարդալէ և սիրոյ հրամաններ տալէ ետքը, որովհետեւ, կ՚ըսէ, պատրիարքը «մեր եղբայր է և սիրելի աշխարհեան, բայց հրաման թագ տուել է գլխին, զի թագ տուել է ժամ որբանշնորհութեան դատաւորքին», յաւելլով թէ «բաց է դատարանք վարդապետս յեղբօրն մերմ, այլ վարդապետք որք չեն եպիսկոպոսք՝ չունին հրաման տալոյ և է կեր արկանելոյ» (ՊԱՍ. 45)։*

**2089.** *Պասմաճեան Սիմէոնի այդ բարեացակամութենէն քաջալերուած, առաջարկեց որ արտօնութիւն տայ*

**ՁԵՌՆԱԴՐՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ**

*Կ-Պոլիս գտնուող եպիսկոպոսներուն ձեռքէն ձեռնադրութիւն ստանալ (ԴԻԻ. Գ. 699), իբրեւ բացառիկ պարագայ մը. քանի որ Նիկիական կանոնով ալ վաւերական կը սեպուէր երեք եպիսկոպոսներու ձեռքով կատարուած ձեռնադրութիւնը։ Սակայն Սիմէոն բացէբաց մերժեց այդ առաջարկը, և իրաւամբ. վասնզի օրինակ տուած և դուռ բացած պիտի ըլլար ապագային ալ, որեւէ պատճառանքով կամ պատրուակով առանց կաթողիկոսի ձեռնադրութիւն կատարելու։ Մենք ալ կ՚ընդունինք թէ վաւերականութեան կողմէն կրնայ հիմնուիլ Նիկիական կանոնին վրայ, և թէ ձեռնադրութիւն կատարելը մետրապոլտական է, և ոչ տիրապէս պատրիարքական իրաւունք մըն է։ Սակայն մեր եկեղեցւոյն մէջ հնաւանդ, և գրեթէ նախնական սովորութեան և հաստատուն օրէնքի ույժ ստացած է եպիսկոպոսական ձեռնադրութիւնը կաթողիկոսին վերապահելու կանոնը, և չէինք ուզեր որ այն որեւէ կերպով խախտուէր կամ վտանգուէր։ Մանաւանդ մեր ազգին ներկայ վայրավատին և ցրուած վիճակին մէջ, միութենէ օրհնութեան և եպիսկոպոսի ձեռնադրութեան կաթողիկոսին յատկացուած ըլլալը, զօրաւոր աղդակ մը կը կազմէ պարտաւորեալ յարաբերութեան և անբաժին միութեան, և պէտք է որ Հայերս գուրգուրանքով պահենք զայն ինչ ալ ըլլայ այդ մասին ուրիշ եկեղեցիներու տարբեր սովորութիւնը։ Սիմէոն այնչափ առջեւ գնաց իւր պնդումին վրայ, որ Պասմաճեանի Էջմիածին երթալուն անհնարութիւնը համակերպելով, յանձնառու եղաւ «թէ գրով և թէ բանիւ խօսով» (ՊԱՍ. 117), և յատկապէս ալ գրեց (ԴԻԻ. Գ. 702), որ ինքն Օսմանեան կայսրութեան մէկ քաղաքը կամ նոյնիսկ Կ-Պոլիս փոխադրուելով Պասմաճեանի ձեռնադրութիւնը կատարէ։ Սիմէոն երկարօրէն բացատրած էր իւր զլացումը, և միանգամայն հրամայած իւր գիրը «ընթեռնուլ ի ներկայութեան իշխանացն, զի և նոքա գիտասցեն» (ԴԻԻ. Գ. 703), բայց սակայն յիշուած ամիրան, ուրիշներ ալ իրեն համաձայնեցընելով, այս անգամ ալ Սիմէոնի գալուստը արգելելու աշխատեցան, բերելով ի մէջ «զբազում ընդդիմութիւնս և զանազան պատճառս»։ Այլ թէ այս դժուարութիւնները ինչ էին, բացատրուած չեն. միայն թէ Պասմաճեան՝ Կարապետ Ուլնեցիի (§ 1944), և Թորոս Սսեցիի օրինակները կը յիշեցնէ (ՊԱՍ. 117), ուստի կը հետեւցնենք, թէ Մայր աթոռէ դուրս ձեռնադրութեան պատճառանքը խօսուած պիտի ըլլայ։ Այլ թէ ինչ կերպով գրեցին և Սիմէոնի գալուստը արգելեցին, չենք գիտեր, միայն թէ անհնար եղաւ Պասմաճեանի «իւր թերութիւնն դարմանել և եպիսկոպոսանալ», թէպէտեւ կ՚ըսէ, «ես առաւել մեք կարեմք լինել, ըստ որում որ հարկաւոր եւս էր լինելն մեր, որովհետեւ թէպէտ բոլոր ազգին և Ստամպօլու քաղաքին ու— թարով— դատարկաւ անուանեալ էաք» (ՊԱՍ. 117)։*

Այսուամենայնիւ Պասմաճեան, լոկ վարդապետութեամբ, ինը տարի պատրիարքութիւն վարեց, և պէտք է իբրև կոյր և փոքրոգի նկատենք իրեն դէմ եղած հակառակութիւնը, որ երբ գլխաւոր կէտին այսինքն պատրիարք միալուն յանձնառու կ'ըլլար, եպիսկոպոսանալուն դէմ ահագին դիմադրութիւններ կը մղէր։ Եթէ Պասմաճեանի օրինակը կ'արդարացնէ եպիսկոպոս չըլլալով պատրիարք ըլլալու ենթադրութիւնը, սակայն անկէ ծագած անտեղութիւնները, միւենոյն ատեն իբր ձախող և անյարմար կը ցուցնեն անոր կրկնումը. և իրաւամբ օրէնք եղած է այժմ՝ հարկաւ եպիսկոպոսական դասակարգէն առնել Կ-Պոլսոյ պատրիարքը։

**2090**. Պահ մը Պասմաճեան պատրիարքը իրեն ալեկոծեալ և դժուարին կացութեան մէջ թողլով անցնինք Սիմէոնի գործունէութիւնն ու արդիւնաւորութիւնը բացատրել։

ՍԻՄԷՈՆԻ ՇԻՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Այն որ նոյն իսկ Ջամբռին մէջ աւելցուցած է Սիմէոնի գովեստը՝ համարձակ կը վկայէ և կը հաւաստէ, թէ անոր օրով Մայրաթոռն էր «ի ամենայնիւ հոգեւորօք եւ մարմնաւորօք, ներքնականօք եւ արտաքնականօք, բնականօք եւ լծականօք, եւ կրթեալ անօթք, բազմապատիկ տան շնորհքն», և «մաքրեաց հանգիստ եւ ազատ ամենայնի» (ՋԱՄ. 34), և «ոչ ոք ի Տաճկաց» կը յանդգնէր միաբանները «հալածել եւ զանել, եւ տանել յաւերան, բանտել եւ տուգանել» (ՋԱՄ. 36)։ Այս ըսելէն կ'անցնի անոր կաթողիկոսութեան օրով կատարուած շինութիւնները թուել, որոնց մէջէն գլխաւորները հարկ կը համարինք մենք ալ յիշել։ Էջմիածնի վանքը և իրեն յարակից շէնքերը պարսպապատ չըլլալուն համար, շատ գողութիւններ կը հանդիպին եղեր, և մանաւանդ ամառները, երբ կաթողիկոսը Երեւան կը պատսպարուի եղեր։ Սիմէոն թէ վանքը և թէ շրջակայ անապատները՝ պարսպով կը շրջապատէ «ամուր եւ հաստատուն բրգօք եւ դրանցօք»։ Վանքին վրայ կ'աւելցնէ ամռան սեղանատունը «ոչինչ կարի», մոմատունը, դպրատունները «ձմռան եւ ամռան յարմար յարկ», վեհարանի հարաւակողմը «գեղեցիկ տաճար մի երկայարկօք», որ Ղազարապատէ վեհարանը զննելու անպատեհութիւնն ալ խափանեց։ Բանքանի ջուրին ճանպաներ աւելցնելով ջուրը կը շատցնէ, և եկեղեցին ու խուցերը խոնաւութենէ կ'ազատէ։ Մայր տաճարին տանիքն ալ կը նորոգէ «ոչինչ կարի», Բերդանսարայ կոչուած շէնքը կանոնաւոր շուկայի կը վերածէ, և վանքէն կը հեռացնէ։ Նոյնիսկ Էջմիածին կամ Վաղարշապատ գիւղն ալ, որ «էր եւ անմիջոց ժողովք եւ խառնիխուռն շինուածով շրջափակեալ էր վանքը», տուները քակելով «հեռացոյց ի դրանէն», և նոր տուներ և գիւղի եկեղեցին շինեց «իբրու արգելաւն» (ՋԱՄ. 34-36)։ Աթոռին կալուած գիւղերուն պաշտպանութեան և հաւաթարերութեան ալ մտադրութիւն դարձուց. Օշականը ազատեց Մուղանլու կոչուած Տաճիկներէն որ 20 տարիէ իվեր բռնի հոն նստած էին. Աշտարակն ու Եղուարդը ու Աղաւնատունն ալ ազատեց, որոնք Ջալալբէգեանի օրէն Տաճիկներու ձեռք անցած էին. նոյնպէս Մուղնին ու Փռանկանոցը՝ զորս Շամախեցիին օրով Տաճիկներ գրաւած էին, թէպէտ վերջէն Փռանկանոցը Բիւլթէփէի հետ փոխանակեց։ Խորվիրապի հողերն ալ ազատեց Բայատ կոչուած Տաճիկներու ոտնձգութենէն։ Բիւլթէփէի մօտ Այրըմլու բլուրին, և Դօսուզ գիւղի մօտ Իճխըլի կոչուած տեղւոյն վրայ նոր Տաճիկ գիւղեր հաստատուիլը արգելեց (ՋԱՄ. 37-38)։ Այս յաջողութիւնները կը կատարէր Սիմէոն զօրութեամբ հին կալուածագիրերու, զորս իւր պրպտումներուն աթիւ կը գտնէր (§ 2076), և որոնց ույժ կու տար Հիւսէյին-Ալի խան իւր իշխանութեամբ, որ քանիցս կաթողիկոսին միջնորդութեամբ դժուարին կացութենէ ազատուած էր։

**2091**. Պարսկաստանի շփոթ կացութիւնը քանիցս յիշեցինք, որով իւրաքանչիւր նահանգի կուսակալութիւն կամ խանութիւն՝ անունով միայն Պարսիկ թագաւորութեան կը պատկանէր, իսկ իրօք ազնկամի պետութիւն մըն էր, իւրաքանչիւրը իրեն յատուկ յարաբերութիւններով։

ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹԻՒՆ

Երեւանի խան Հիւսէյին-Ալին ալ անոնցմէ մէկն էր, որ իրեն դրացի ունէր Վրաց թագաւորութիւնը, և չկրնալով անոր դիմադրել, որոշ ընծայի կամ յաւելեալ հարկի վճարման պայմանով, անոր թշնա-

մութենէն զերծ կը մնար։ Բայց խալամ իշխանին ծանր կու գար քրիստոնէին ձեռքին տակ նկուն մնալ, և ստէպ վտարանջելու փորձեր կ'ընէր։ Ցարմար առիթ կարծելով 1764'ին շփոթութիւնները, Ղազախ գաւառի վրայ յարձակեր և շատ վնասներ հասուցեր էր բնակիչներուն։ Իսկոյն Հերակլ թագաւոր Վրաց բանակը քալցուց, Էջմիածինի մօտեցաւ, Սամաղար գիւղը կանգ առաւ, և անկէ Էջմիածին այցելեց, և Սիմէոնէ պատուասիրուեցաւ։ Հիւսէյին-Ալի նեղը մտած, դեսպաններ և ընծաներ փութացուց Էջմիածին, Սիմէոնի միջնորդութիւնը հայցելով։ Հերակլ այնտեղ չուզեց ընդունիլ դեսպանները. բայց տեղի տուաւ միջնորդին, և յայտարարեց՝ [illegible] (Դիւ. Գ. ճյա.), և Սիմէոն հանդիսապէս իւր շնորհակալութիւնը վկայեց։ Բայց դարձեալ ստիպուեցաւ Հերակլի և Երեւանի մէջ բանագնաց պտտիլ, որպէսզի խանը համոզէ Հերակլի պայմանները ընդունելու, և Հերակլը համոզէ որ դրամական պահանջը շնորհէ, և այսպէս երկիրը աւերածէ և խանը տագնապէ ազատեց։ Սիմէոն առանձին միջնորդութիւն ալ ըրաւ, Հիւսէյին-Ալիի աները՝ Սիւլէյման Քիւրդ պէյն ալ Հերակլի հետ հաշտեցնելու։ Սիւլէյման ալ իւր կողմէն օգտակար եղաւ Սիմէոնի, երբոր Հիւսէյին-Ալի Էջմիածինի հարկահանութիւնը Սիմէոնի վրայ դարձնելէն ետքը, վանքի մը տարեկանը կանխիկ կը պահանջէր, և այս պատճառով Սիմէոնի հետ խռովէր էր, զայն տեսնել չուզելու չափ։ Սիւլէյման իւր փեսային ընթացքը պախարակեց, և Հիւսէյին-Ալի Սիմէոնի երախտիքը յիշելով, իւր պաշտպանութիւնը ընդարձակեց (Դիւ. Գ. ճյ.-ճյը.)։ Բայց այս ընելով ինքն աւելի օգտուեցաւ, զի 1769'ին նորէն Հերակլի և Հիւսէյին-Ալիի միջև գրգռութիւններ նորոգուեցան, և կրկին այդ վերջինը Սիմէոնի միջնորդութենէն օգտուեցաւ, և խաղաղ ժամանակամիջոց մը անցուց մինչև 1779, երբ երրորդ անգամ մըն ալ Հերակլ զինու զօրութեամբ Հիւսէյին-Ալին ընկճելու ստիպուեցաւ։ Սիմէոն այդ յաջողութիւններովը քաղաքական աշխարհի մէջ ալ համբաւ և դիրք էր կազմած, և ուրիշ կողմերէ ալ իւր միջնորդութիւնը փնտռուած էր՝ դժուարին կացութենէ դուրս ելլելու համար։ Իմէրէթի Սողոմոն թագաւորը, որ Բաշաչխեաց կամ Բացգլուխներու թագաւոր ալ կը կոչուի, Իմէրէթցիներուն գլխանոց չգործածելուն պատճառով, հրաման էր հանած, որ այլեւս իւր հպատակները իրենց տղաքներն ու աղջիկները Օսմանցոց չվաճառեն, հինաւուրց [illegible] համեմատ։ Ասկից գրգռուած Կարնոյ Ապտիւրրահման փաշան՝ պատերազմի ելաւ Իմէրէթցոց դէմ, որոնք Օսմանցի բանակը քիչ քիչ նեղելով թողուցին որ մինչև իրենց երկրին խորը մտնէ, և Ռիոնի կամուրջն ալ անցնի, ուսկից ետքը կամուրջը փլցնելով Օսմանցիները կոտորեցին, և հազիւ հրամանատարը ժամանակին լուր առնելով կրցաւ ինքզինքը ազատել։ Օսմանցոց բանակէն անյայտացած էին նաև Պայազիտի փաշային որդին Ապտի պէյը և եղբօրորդին Մուսթաֆա պէյը. և կուսակալը իբր Սիմէոնի նախածանօթ (§ 2074), անոր միջնորդութեանը դիմեց կորսուածները գտնելու և ազատելու համար։ Սիմէոն յաջողութեամբ կատարեց անոր խնդրանքը, Վրաց Հերակլ և Իմէրէթի Սողոմոն թագաւորներուն առջև ունեցած ազդեցութեամբը (Դիւ. Գ. 76-82)։ Բագրեւանդի առաջնորդ Զաքարիա վարդապետն էր կուսակալին և կաթողիկոսին մէջտեղ երթևեկողը, որ և աւելի զօրացաւ իր դիրքին մէջ, և Սիմէոնի 1764 մարտ 29'ի պաշտօնագրով իւր պաշտօնին գլուխը վերադարձաւ (Դիւ. Գ. 82)։

**ԱՂՈՒԱՆԻՑ ԱԹՈՌԸ**

**2092**. Սիմէոնի շինարար և քաղաքական յաջողութիւններէն աւելի ալ բարձր եղան իւր եկեղեցական ձեռնարկները, որոնք գլխաւորապէս Մայրաթոռոյ հայրապետական իրաւունքներուն պաշտպանութեան շուրջը կը դառնան։ Ներսէս Գանձակեցին, որ բաւական ալեկոծ և շատ երկար ատեն Աղուանից կաթողիկոսութիւնը վարեց մինչև 1763 (§ 2019), մեռաւ երբ տակաւին կենդանի էր Շամախեցին։ Անոր մահուընէ ետքը իւր եղբօրորդին Իսրայէլ, [illegible], կաթողիկոս կ'օծուի Աղուանքի Պարսիկ խանին Շահվէրտիի կամքով, առանց Հայոց կաթողիկոսին հաւանութեան և առանց բո-

լոր Աղուանից համակամութեան։ Իսրայէլ օծումէն ետքը Շամախեցիին կը դիմէ հաստատութիւն խնդրել, որ իբր պատասխան գրէ զԹուղԹս մեղադրական և յանդիմանական։ Բայց Շամախեցին նոյն օրեր կը վախճանի, և Իսրայէլ իւր համախոհներով Սիմէոնին կը դիմէ, որ նոյնպէս հաւանութիւնը կը զլանայ, պահանջելով որ Իսրայէլ անձամբ ներկայանայ և դիմադրող կողմերը հաճեցնելով գործը վերջացնէ։ Իսրայէլ չգար և Աղուանններուն այն կողմը, որուն Իսրայէլ հաճելի չէր, 50 հոգիէ բաղկացեալ պատգամաւորութիւն մը կը կազմէ, և խաներէ ոմանց ալ հաւանութեամբ, Էջմիածին կը բերէ շոն վարդապետ Յովհաննէս, որ կաթողիկոս ձեռնադրուի։ Սիմէոն ասոր ալ չհաւնիր, Թախանձանաց և սպառնալեաց կը դիմադրէ, իսկ պատգամաւորները Գանձասար կը դառնան, և հոն Յովհաննէսը կաթողիկոս կը ձեռնադրեն։ Այդ բաժանումէ յառաջ եկած կենամահ խռովութեան տեւեց, մինչեւ որ 1765'ին Սիմէոն Յովհաննէսը քաշուելու համոզեց, եթէ Իսրայէլ հնազանդի և Մայրաթոռ ներկայանայ։ Բայց Իսրայէլ՝ Շահվէրտիին ապաւինելով, միշտ ընդդիմացաւ, անարգելով Հերակլի ալ յորդորները և Տփղիսի առաջնորդ Զաքարիայի պատուիրակութիւնը։ Երբ Իսրայէլ վերջնապէս հեռացաւ, Սիմէոն եպիսկոպոսական ժողովով զայն աթոռէն զրկեց, կամ ինչպէս ինքը կ'ըսէ, լուծեալ է կարգէն և խափանեալ ըստ արժանւոյն։ Յովհաննէսի ալ օրհնութեամբ և աղօթիւք կաթողիկոսական աստիճանը վաւերացնելէ ետքը, պատշաճ պատուով և կոնդակներով և հրահանգներով յղեց Գանձասար, Տփղիսի Զաքարիա վարդապետն ալ ընկեր տալով, որ յանուն Մայրաթոռոյ պէտք եղածը գործէ։ Պաշտօնական գործողութեան Թուական ցուցուած է 1765 դեկտեմբեր 25 (ԶԱՄ. 91), իսկ Էջմիածինէ մեկնած են դեկտեմբեր 28'ին (Դիւ. Գ. 370), հարկաւ Ծննդեան տօնը Գանձասարի աթոռին մէջ կատարելու նպատակով։ Իսրայէլ փորձեց Հերակլի պաշտպանութեան դիմել, բայց ընդունելութիւն չի գտնելով, ձեռնունայն Տփղիսէ Գանձակ դարձաւ, ուր քաշուած մնաց 11 տարի բանադրանաց ներքոյ (Դիւ. Գ. ճծը.), և Յովհաննէս չարունակեց կաթողիկոսութիւնը վարել։

**2093.** Էջմիածնի ուղղակի հպատակող և տէրունի կոչուած վիճակներուն կարգին յիշուեցաւ Հաշտարխանն ալ (§ 2078), որ և Աժտէրխան կամ Աստրախան, որուն սահմանն էր բովանդակ Ռուսական կայսրութիւնը։ Վիճակին կազմութեան Թուականը յայտնի յիշուած չէ, բայց վստահօրէն կրնանք հանել մինչեւ Մինաս Տիգրանեան եպիսկոպոսը, որ առաջ Իսրայէլ Օրիի ընկերացաւ (§ 1845), և վերջէն Աստրախանի մէջ հաստատուեցաւ (§ 1902), ուր Հայերու գործերով զբաղեցաւ (§ 1931), և հոն վախճանեցաւ։ Այսպէս գործնական կերպով հաստատուած կ'ըլլայ Ռուսիոյ առաջնորդութիւնը, Թէպէտ Մինասի յաջորդներուն անունները չենք գտներ։ Ղազար Ջահկեցիի օրով այդ պաշտօնին վրայ կը գտնենք Բարսեղ Փառակեցի եպիսկոպոսը, որուն դժնեայ բարոյութեան գործերը վիճակայինները զզուեցուցին, և Ջահկեցիէ իրենց գանգատներուն ունկնդրութիւն չգտնելով, Փառակեցին հեռացուցին, և Աղուանից աթոռէն Ստեփանոս Անանեան եպիսկոպոսը իրենց առաջնորդ ընտրեցին, և Եղիսաբէթ կայսրուհւոյն օրով պետական հաստատութիւն ալ ընդունեցան։ Պէտք չէ մոռնալ որ նոյն իսկ առաջին եպիսկոպոս Մինաս Տիգրանեան ալ, Աղուանից աթոռէն էր։ Իսկ այս անգամ Ռուսիոյ Հայեր պաշտօնապէս զատուած դիրք մը կազմեցին։ Այս եղելութիւնը տեղի ունեցաւ 1749'ին (ԶԱՄ. 39)։ Ջահկեցիին յաջորդները պատեհ չունեցան և կարեւորութիւն չտուին, և Գանձասարցի եպիսկոպոսին իրաւասութիւնը և Գանձասարի կաթողիկոսին յիշատակութիւնը տիրեց Ռուսիոյ մէջ, այնպէս որ Էջմիածնեցի վարդապետ կամ եպիսկոպոս չէր կրնար այն կողմերը երթալ, բայց եթէ ժամանաւոր վարդապետ մի գնայր երբեմն, այն ալ ընդ ձեռամբ Գանձասարցի առաջնորդին լինելով, և համառօտապէս տրուած նպաստ միայն ժողովէր, և ոչ Թէ նուիրակութեան իրաւունք (ԶԱՄ. 39)։ Սիմէոն իւր օրով ձեռնարկեց այդ գործն ալ կարգադրել, և նուիրակութեան պաշտօնով Ռուսիա ղրկեց Յովհաննէս Քանաքեռցի վարդապետը. բայց Գանձասարցոց ոյժը կատարեալ էր, և ժողո-

ՌՈՒՍԻՈՅ ՎԻՃԱԿ

*վուրդին Էջմիածինէ պաղութիւնը կը չա-րունակէր, և Աղուանից երկու կաթողիկոս-ներն ալ, Իսրայէլ և Յովհաննէս չէին ուզեր ձեռքէ հանել իրենց աթոռին ստացած ըն-դարձակութիւնը։ Բանաքեռցին ընդունե-լութիւն չգտաւ, և միայն անօրէնք և անդա-դէն անկեալ է ի միում անկեան, և չկրցաւ նուի-րակութիւնը բանալ (Դիւ. Գ. 497)։ Ասիկայ մեծ ցաւ էր եղած Սիմէոնի, բայց չէր կըր-ցած նոր ձեռնարկ մը ընել, մինչև որ Աղ-ուանից աթոռին ըմբոստութիւնը չճնչէր, Յովհաննէսը հնազանդութեան բերելով, և Իսրայէլը աթոռազրկութեամբ և բանադրա-նօք տկարացնելով, ինչ որ իրականացաւ 1766 տարւոյ առաջին ամիսներուն մէջ (§ 2092)։ Այն ատեն միայն կրցաւ Սիմէոն հաստատուն գետնի վրայ քայլ մը առ-նել, և ուղղակի Ռուսաց կայսրութեան դի-մեց Մայրաթոռոյ իրաւունքները վերահաս-տատելու Ռուսիոյ Հայերուն վրայ, և Եկա-տերինէ Բ կայսրուհիի իշխանութեամբ օրի-նական կացութիւն մը ստեղծել։ Պետեր-բուրգ երթալու նշանակեց Դաւիթ Տփղի-սեցի վարդապետը (ՋԱՄ. 40), ով քերթողա-պետ, լուսաւորիչ և հովուապետդ երկրիս, և ըն-տրեալդ ի մէջ աշխարհի մարդոց, և քաջահմուտ պատ-կերաց, յարմարապետդ և բարեբարոյ բարոյ (Դիւ. Գ. ծկը.)։ Սիմէոն այս արտաքին առաւե-լութիւնները չունէր (§ 2070), բայց անոնց օգտակարութեան մասին համոզում գոյա-ցուցած կ'երևի Դաւիթի ընտրութեան մէջ։*

**2094.** *Բայց այդչափով չգոհացաւ Սի-մէոն, լաւ և պատճառաբանուած գիր մը պատրաստեց կայսրուհւոյն և գահաժառանգ Պօղոսի ուղղուած 1766 օգոստոս 1 թուականով (Դիւ. Գ. ծկե.)*

ՌՈՒՍԻՈՅ ՀԵՏ

*և հոգևորական ընծաներ ալ պատրաստեց, զմասն ինչ ի նշխարաց սրբոյ Կարապետին, սրբոյն Հակոբայ, սրբոյն Գէորգայ, և ի Նոյեան սրբոյ տապանէն, զորս զետեղեց ի քառանկեանի արկեղ երեք արծաթեայ։ Բազմաթիւ յանձ-նարարականներ ալ գրեց Ռուսաստան գտա-նուող ազգայիններուն, որպէս զի կաթողի-կոսական նուիրակին պատշաճ պատիւներ ընծային, և կառավարութեան մօտ անոր մուտքն ու յաջողութիւնը դիւրացնեն։ Այդ գիրերուն առաջինները ուղղուած էին Աստ-րախանի գլխաւորներուն, որոնք արդէն դէպ Էջմիածին մերձաւորութիւն սկսած էին ցուցնել. Աղուանից աթոռին ազդեցութեան կոտրուելուն վրայ։ Յիշատակութեան ար-ժանի է Մովսէս Աստապատցիին եղած յանձ-նարարութիւնը, որ առաջին անգամ թթե-նիի սերմը և շերամի որդը Ռուսաստան տարած, կայսերական գնահատման արժա-նացած, նախարարներէն համապատիւ փառք ստա-ցած էր (Դիւ. Գ. ծկը.), և իւր խօսքը ընդու-նելի էր Ռուսաց արքունիքին մէջ։ Յատուկ կոնդակով իրմէ խնդրեց Սիմէոն, օժանդակ լինել իւր աղերսած պաշտօնատար Դաւիթ Վար-դապետին։ Արդէն Աստրախանի աթոռին կա-ցութիւնը Մովսէսի ալ հաճելի չէր (Դիւ. Գ. ծկե.)։ Ռուսաց արքունիքի առջև մեծ յարգ ունէր, Յարութիւն, կամ աւելի ուղիղ Յով-հաննէս Ջուղայեցի քահանան ալ (Դիւ. Գ. 499), թէպէտ չենք գիտեր թէ ինչ էր իւր արժանիքը։ Առևտրական ազդեցիկ դէրք ունէին Պետրբուրգի և Մոսկուայի մէջ՝ Եղիա-զար, Ղուկաս, Ներսէս և Յովհաննէս աղա-ներ, ինչպէս նաև Բարթողիմէոս և Շամա-խեցի Սարգիս առևտրականները. Սիմէոն ասոնց իւրաքանչիւրին զատ զատ յանձնա-րարականներ կը գրէր։ Զէր մոռնար նոյն իսկ Աստրախանի Ռուս մետրապոլիտ՝ Մէ-ֆոդի կամ Մէթոտիոսի ալ գրել (Դիւ. Գ. 499), մէկ խօսքով ամէն հնարաւոր միջոց կը գործածէր, որպէս զի Ռուսիոյ վիճակը, որ 17 (Դիւ. Գ. 498) և ոչ 20 (ՋԱՄ. 39) տարիներէ իվեր ելած էր Մայրաթոռի իրա-ւասութիւնէն, նորէն իւր նախկին դիրքին վերադառնայ։ Սիմէոնի ջանքերը յաջողու-թեամբ պսակուեցան, և Ռուսիոյ Եկատե-րինէ Բ կայսրուհւոյն առջև ընդունելու-թիւն գտաւ կաթողիկոսին առաջարկը։ Պատ-մական պարագաներուն մտադրութիւն դար-ձնելով՝ պէտք է համոզուինք, թէ արդէն Սիմէոնի առաջարկը Ռուսական քաղաքա-կանութեան առջև ընդունելի ըլլալու սահ-մանուած էր։ Վասնզի Հայաստանի կեդրոնը գտնուող, և ընդհանուր Հայութեան գլուխ ճանչցուած Էջմիածինի աթոռին բարեկա-մութիւնը՝ շատ աւելի օգտակար պիտի ըլ-լար Ռուսական ազդեցութեան և տիրապե-տութեան ընդարձակուելուն, քան թէ ամ-փոփ երկրի մը մէջ գտնուող, անձուկ վի-*

ճակի վրայ իշխող, և Հայութեան վրայ ազդեցութիւն չունեցող Աղուանից աթոռը։ Սիմէոնի թուղթին պատճէնը չունինք առջևնիս, որ տեսնենք թէ Սիմէոն ալ չօշափած է՞ արդեօք այդ կէտերը։ Եկատերինէ կայսրուհին ինչինչ թանկագին՝ ընծաներէ զատ, 1768 յուլիս 30 թուականով (Դիւ. Գ. ճլ.) հրովարտակ մըն ալ տուաւ, որուն մէջ մեծ կարևորութիւն կու տայ Հայոց կաթողիկոսին։ Անոր մէջ կը հրամայուի, որ բոլոր Ռուսիոյ մէջ գտնուող Հայ ժողովուրդը ամենապատուելի Սիմէոն պատրիարքին և նորա պատրիարքական աթոռոյ յաջորդներին՝ իշխանութեան ներքոյ ճանաչուի, նա կարենայ պաշտել իւր դաւանութիւնը իւր հոգևորական կանոններով և եկեղեցական կարգերով, և առանց էջմիածինի պատրիարքական աթոռին գրաւոր վկայութեան, որևէ Հայ հոգևորական պաշտօնեայ չընդունուի Ռուսական տէրութեան մէջ։

**2095.** Ռուսիայէ դուրս եղող Հայերու համար ալ կը խօսի կայսրուհիին հրովարտակը, և կը յայտարարէ, որ հետևելով մեր բարձրագոյն նախնիներին, բարեհաճեամ ենք, Սիմէոն պատրիարքին և յաջորդներին, նոյնպէս և եղբայրներին և կառավարիչներին և բոլոր հաւատարիմ Հայոց ազգին պահպանել, մեր կայսերական ողորմութեան և շնորհաց ներքոյ (Դիւ. Գ. ճէր.)։ Այս թուականը կրնանք նկատել իբր հիմն և արմատ այն սերտ յարաբերութեան, որ հաստատուեցաւ Հայոց կաթողիկոսութեան և Ռուսաց կայսրութեան մէջ, և որ յառաջանալով և աճելով յանգեցաւ Ռուսական տիրապետութեան Հայաստանի մի լաւ մասին և Հայութեան մի լաւ կէսին վրայ, ինչպէս է այսօրուան կացութիւնը։ Գաղափարը Սիմէոնին գիւտ չէր. այն Օրիի և Մինասի օրէն օրօրուած գաղափար մըն էր (§ 1846), շատ ճիգեր ալ թափուած էին այդ մասին։ Պետրոս Մեծէ սկսելով Ռուս վեհապետներն ալ զանազան ձեռնարկներ ըրած էին, կաթողիկոսներէն քանիներ ալ գործին մղում տուած էին, Պարսկական լուծին ազատելի հետևանքներէն մղուած. բայց բաւական ժամանակ էր որ գրեթէ լքուած էր գաղափարը և թուլցած էին ձգտումները։ Սիմէոնի արդիւնքն եղաւ՝ գրեթէ մոռցուած ու դադարած ծրագիր մը վերակենդանացնել, և անոր հաստատուն և պաշտօնական կերպարան մը տալ, և տակաւ զարգանալիք և յառաջանալիք ճամբու վրայ դնել։ Սիմէոն փութաց ստացած արտօնութիւնը գործադրել, Մինաս եպիսկոպոս մը առաջնորդ և նուիրակ նշանակելով (ՁԱՄ. 50), նոյնինքն Պայազիտի նախկին նուիրակը (Դիւ. Գ. 324), որ եպիսկոպոս ձեռնադրուած էր, 1767 յուլիս 8ին (Դիւ. Գ. 732)։ Յաջողութենէն ուրախացած գործին նուիրական ձև մըն ալ տուաւ Սիմէոն, եկեղեցական արարողութիւն ալ կազմելով 1771 յուլիս 10ին հրովարտակէն երեք տարի ետքը, զոր մակագրած է Գիրք հանդիսադրութեանց տօնից կայսերականաց, և յառաջաբանին մէջ կը յիշէ, թէ Եկատերինէ կայսրուհին, իւրով ձեռամբ հրամանագրով և [illegible], [illegible] ամենայն Հայոց [illegible] Էջմիածին պահել [illegible], [illegible] Հայոց իւրոյ ամենապայծառ թագաւորութեան [illegible] և իւրային [illegible], և [illegible] մեր յատուկ սիրոյ և ողորմութեան նշանաւ [illegible] և մեծարեաց։ Այս շնորհներուն իբր երախտագիտական փոխարէն, մաղթողական կարգ մը շարադրեց վասն մեծապայծառ տօնախմբութեան նորին, և կը հրամայէ որ ցորչափ Հայերը տօն ընդ օրհնեալ տէրութեամբ նորին, կայսերական տօներուն օրերը եկեղեցականք և աշխարհականք մեծահանդիսութեամբ կատարեսցեն զայս կարգ։ Նկատելով որ 1771ին քանի մը հայաբնակ գիւղեր միայն էին ընդ տէրութեամբ Ռուսաց, կ'երևի թէ Սիմէոն ուզած է ընդ հովանաւորութեամբ ըսել, և ոչ ընդ տիրապետութեամբ, որով Ռուսական պաշտպանութիւնը բոլոր Հայաստանի և Հայութեան վրայ տարածել։

**2096.** Սիմէոնի հաստատած այդ կարգը, մինչև այսօր պահուած և գործածուած ըլլալով Մայրաթոռին մէջ, ուշադրութիւն չենք սեպեր, վերլուծութիւնը տալ նոյն կարգին՝ որ Ռուսական բառով Մոլեբին կը կոչուի։ Կարգը բաղկացած է ոչ թէ արդէն ծանօթ և գործածական հայկական աղօթքներով և երգերով, այլ Սիմէոն ինքնին Ամենահզօր Աստուած սկսուածով երեք տուն շարական մը շինած

**ՌՈՒՍԻԱ ՊԱՇՏՊԱՆ**

**ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՄԱՂԹԱՆՔ**

է, և Օրհնեալ ես Հայր ամենակալ աղօթք մըն ալ յօրինած, Եւ որդ ձեր հանգիստով։ Անոնց վրայ աւելցուցած է Իսաղմոսէ 7 տուն, Առակէ, Եսայիէ, Պետրոսէ ու Պօղոսէ, և Մատթէոսի աւետարանէն ընթերցուածներ, և անդաստանի ձեւով տեառնագրութիւն ու Պահպանեա ու Հայր մեր։ Առաջին տպագրութիւնը 1771'ին կատարուած է իւր օրով, երկրորդը 1823'ին Եփրեմի օրով, չորրորդը 1859'ին Մատթէոս Ա'ի օրով, և վերջին մըն ալ տեսած ենք 1877'ին Գէորգ Դ'ի օրով։ Առաջինները ամենայն ճշդութեամբ իրարու նման են եղած, սակայն վերջիններին խորագիրները յապաւուած են, և գլխաւորապէս զեղչուած են աղօթքին առեն ընթերցող և ի վերայ ծնրադրող, և ուղղեալ ի վերայ որոց բառերը։ Սակայն յապաւումը կառավարական դիտողութեան առարկայ եղած ըլլալով, նորէն հին ձեւը գործադրութեան մտած է, ինչպէս մինչև այսօր ալ կը պահուի։ Թագաւորաց համար աղօթքը Հայ պաշտամանց մէջ ընդունուած էր, և շատ կտորներ ունինք այդ իմաստով, որոնցմէ կրնար օգտուիլ Սիմէոն, առանց իրմէ յօրինուած կտորներ մուծանելու, որոնց մէջ կը պակսին Հայ եկեղեցւոյ ծիսական աղօթքներուն և երգերուն յատուկ եղող լեզուի օծութիւնը և ոճի վեհութիւնը։ Հնար էր չափազանցուած ըսել Սիմէոնի կազմած ձեւերը, և Հայոց եկեղեցւոյն ծէսին հակառակ ըսել՝ եկեղեցւոյ մէջ վեղարը վար առնելու, կամ ծնրադիր աղօթելու կերպերը, և նոր յօրինուած աղօթքներուն և երգերուն մէջ ալ՝ արտաքին գովարանութեանց նմանող բացատրութիւնները։ Բայց պէտք է դիտել Սիմէոնի և ժամանակակիցներուն հոգեբանական բորբոքումը, և գաղափարներու յանկարծական յուզումը, երբ շնորհիւ Ռուսական հովանաւորութեան զսպուած տեսան Պարսկական տիրապետութեան հարստահարութիւնները, և ինքզինքնին ապահովութեան ներքեւ առնուած գտան քմահաճ բռնութեանց դէմ։ Գալով Ռուսական յարաբերութեանց և հովանաւորութեանց խնդիրներուն, ստոյգ է որ նոյնիսկ Հայերու կամակցութեամբ և գործակցութեամբ, պաշտպանութիւնը հետզհետէ տիրապետութեան փոխուեցաւ, և տիրապետութիւնն ալ աստիճանաբար սեղմումներու առաջնորդեց։ Սակայն եղելութիւնը իւր ամբողջութեան մէջ նկատի առնելով, պէտք է ընդունիլ, թէ լարաբաժին Հայաստանին զանազան մասերուն մէջ, լաւագոյն կացութիւնը ռուսական տիրապետութիւնը իրականացուց, և դիտողութեան ենթակայ եղող կէտերն ալ՝ աստիճանաբար դարմանուելու ակնկալութիւնը կ'աճեցնեն, քանի որ ազատութեան և հաւասարութեան հիմնական սկզբունքները՝ պաշտօնական և գործնական շրջանակին մէջ մտած են։ Այնպէս որ այսօր ոչ մի փաստ կամ առիթ չենք գտներ Սիմէոնի առած նշանաւոր քայլը մեղադրելու կամ քննադատելու։

2097. Սիմէոնի ձեռնարկներու կարգին գլխաւոր տեղ կը բռնեն Հայաստանեայց եկեղեցւոյ պաշտպանութեան համար թափած ջանքերը, և հռոմէադաւանութեան յառաջացման դէմ գործածած միջոցները։

**ԱԽԼՑԽԱՅԻ ԽՆԴԻՐԸ**

Այդ ձեռնարկին իբր չարժառիթ կը ցուցուի Կարնոյ Կարմիրվանքի միաբաններէն Գէորգ Եւդոկիացի վարդապետը՝ 1760'ին Շամախեցիէն եպիսկոպոս ձեռնադրուած, և 1764'ին Ախալցխայի նուիրակութեան ղրկուած, ուր ակնարկէ յայտնել զդաւանութիւն ուղղափառութեան, ինչպէս կը կոչուի հռոմէադաւանութեան հակամիտութիւնը։ Չէ ճշդուած թէ ե՞րբ Գէորգ այդ ուղղութիւնը ընդգրկեց, բայց յիշելը թէ Ախալցխա քաղաքն չորեքն ամաւ յառաջ ապականեցեալ էր նոյն դաւանութեամբ, Գէորգի այն տեղ խմորուած ըլլալուն կ'ակնարկէ։ Գէորգ իր յանդգնութիւնը հետզհետէ առջեւ կը տանի, և մինչև իսկ եկեղեցւոյ բեմէն, զՀայոց ազգն և զեկեղեցին վարդապետ, և զանուն [illegible] չէշէ, և ուրիշ այնպիսի կը գործէ։ Ասոր վրայ նոյն իսկ Կարնեցիք [illegible], կաթողիկոսին կը բողոքեն, և որովհետև Ախալցխա Օսմանեան երկիր էր, Սիմէոն Կ-Պոլիս կը գրէ, և Պասմաճեան պատրիարքին ձեռքով երեք հրովարտակներ հանել կուտայ, երկուքն յաղագս ի վերայ Ախալցխայու, և մինն ի վերայ ամենայն տեղեաց, որ այր որ Հայ ֆռանկացեալ էին՝ ընդդիմադարձեցին [illegible] օրինաց, և մի՛ եւս արարցեն զֆռանկութիւն, և այր որ Ֆռանկ [illegible] էին՝ [illegible]

*իւրեանց։ Սիմէոն հրովարտակները ստանալով Տփղիսի առաջնորդ, Անկոթ մականուանեալ Մարտիրոս եպիսկոպոսը յատուկ պաշտօնով Ախալցխա կը ղրկէ 1769'ին, բայց Գէորգ Նեղոկիացին, որոնց վրայ յանուանէ բանադրանք ալ հրատարակուած էր կաթողիկոսէն, կը չտապէ Կ-Պոլիս փախչիլ և Բեկօղլէ թաղի Լատին վանքերէն միոյն կ'ապաւինի, ուր և յետոյ կը մեռնի։ Մարտիրոս եպիսկոպոս հրովարտակին զօրութեամբ,* Պօղոս, Ստեփան և Յովհաննէս սեւագլուխն և Յակոբ վերեցն *Էջմիածին կ'աքսորէ, և հռոմէականաց ձեռք անցած երեք եկեղեցիները ետ կը դարձնէ, նոյնպէս* վեցին ֆռերէ ֆրանկաց *կուսակալին ձեռքով ձերբակալել կու տայ, և աքսորել* յերկիրն իւրեանց *(ՋԱՄ. 41)։ Յիշեալ անձերուն ինքնութիւնը աւելի յստակօրէն ցուցնելու համար, աւելցնենք թէ էին Պօղոս Լեւոնեան և Յովհաննէս Ճրկոնեան և Ստեփան Աւթանդիլեան վարդապետները, Հռոմի Ծաւալոցի կամ Փրոփականտայի վարժարանին աշակերտներ, իսկ Յակոբ՝ Ախալցխայի ամուսնաւոր երէց մըն էր (ԳԱԼ. 293)։ Աքսորուած Լատին կրօնաւորներէն ալ յանուանէ կը յիշուին Ալոիզիոս, Հերոնիմոս, Վիչէնցիոս, Ֆէտէրիկօ և Ֆօռթունատօ (ԴԻԻ.Ը.121)։ Ախալցխայի կուսակալը ասոնք իսկոյն աքսորելու տեղ,* ի կողմն էր արարեալ յափն ծովուն ի տեղւոջ իմն *(ԴԻԻ. Ը. 110), իբրև երկրին խռովարարներ։ Ասոր վրայ Գաղղիոյ դեսպանը, որ էր Կինեար Սէնբրիսթ կոմսը* (Guignard comte de Saint-Priest) *շրջաբերական գիր մը ուղղեց Լատին կրօնաւորներուն* զի մի ևս մտցեն ի մէջ Հայոց ժողովրդեան ուրեք լինիցին, և կամ յեղաշրջեսցեն զնոսա ի հաւատոց իւրեանց։ *Այդ գիրը պատրիարքին միջնորդութեամբ, հաղորդուեցաւ Սիմէոնի, որ* զդեսպանէն շնորհակալ էր*, և Լատին կրօնաւորները արձակել տուաւ։ Միանգամայն աւելցուց, որ* յայնժամ լինէր հաստատեալ շնորհակալ*, երբ* աստի դէր ևս ի ֆռանկէն հանցէ*, որ իւր կրօնաւորները* մի՛ այլայլեսցեն զեղծանել ազգս Հայոց, և մի՛ հանցեն ի բնական աւանդութեանց իւրեանց *(ԴԻԻ. Ը. 111)։ Նրանի՛ թէ այդ խոհական թելադրութիւնները և դեսպանին առած խոհեմ քայլը՝ հռոմէադաւանութեան պետին և պաշտօնէից կողմանէ, ընդունելութիւն գտնային։ Այս կերպով չահադիտական ուղղութեամբ գրգռուած անտեղութիւններ՝ պակաս եղած պիտի ըլլային ազգիս վրայէն։*

**2098**. *Իսկ այն չորս եկեղեցականները որ Էջմիածին տարուեցան, իրաւամբ կը նկատուէին իբր ըմբոստներ, զի Հայոց եկեղեցւոյ պաշտօնէութեան կերպարանին ներքև Հայոց եկեղեցւոյն դէմ դաւաճանել կը յանդգնէին, և այս պատճառով* կրեցին շատ նեղութիւնս *Մայրաթոռին մէջ, մինչև որ կը փութան և* երկիցս անգամ հայերէն գիր կապան դատաստանաբեան՝ վճարելով և նեղելով, զի մի ևս դարձցին ի նոյն աղանդն *(ՋԱՄ. 42)։ Այլ և երբ Ախալցխացի հռոմէադաւաններուն կողմէ* նոր ստորագրութեամբ և ընդդիմութեամբ մի *գիր մը հասաւ կաթողիկոսին, որով հռոմէադաւանները յատուկ քաջքչուք բացատրութիւնները կը կրկնէին իրենց ջատագովութեան համար, վերոյիշեալ չորսերը* դարձեալ ի նոցանէ, գրեցին նոցա առ այս շնորհմանութեան *(ԴԻԻ. Ը. 96)։ Իսկ Սիմէոն բաւականացաւ պատասխանել, թէ* ծանեաց, զի գոյ ի յետ փճացութեան և անկարգութեան*, անոր համար* վերակրկնեմ յետ դարձեալ զնոյն յորդորմամբ, զի բաւական համարեսջիք, որպէս մինչև ցայժմ ընթացայք ընդ անկոխ անդէտս, թողլով զօրէնս և զհայրենատուր դաւանութիւն *(ԴԻԻ. Ը. 77)։ Էջմիածին աքսորուածներ տուած յայտարարութիւններուն կրթնելով, չարունակ իրենց արձակման հրամանը կը խնդրէին, բայց Սիմէոն կամաւ կը յապաղէր անոնց ներքին հաստատամտութեան վրայ վստահութիւն կազմելու համար, և այսպէս երկարեցաւ մինչև* յամս երիս*, մինչև որ Ռուսաց պատերազմին առթիւ, հրամանատար Մուսթաֆա փաշային միջնորդութեան դիմեցին Ախալցխացիները. փաշան ալ նախապէս* էառ գիր ի բերանոյ հաւատացելոց դաշնեմայր, զի մի ևս երեւեսցեն ի յանձեանս ընդդէմ աղթարմայութեան*, և զայն կաթողիկոսին ղրկեց, և սա ալ Կ-Պոլիս գրելով* եւ բերել դարձական ֆերմանն*, և չորսերը Ախալցխա դարձուց 1771'ին (ՋԱՄ. 42)։ Անոնցմէ երկուքը, Լեւոնեան և Աւթանդիլեան անմիջապէս հեռացան և Հռոմ գացին, և հոն եպիսկոպոսութեան պաշտօնի հասան (ԳԱԼ. 293), իսկ միւս երկուքը կ'ե-*

ԽՆԴԻՐԻՆ ՓԱԿՈՒՄԸ

*րեւի թէ Ախլցխա մնացին, ուր համէշադաւանութեան սերմերը բոլորովին չայաւեցան։ Իբր զի ամէն տեղ՝ ուր կրօնական անջատման մը սկզբնաւորութիւն կ'ըլլար, անհնար կը դառնար զայն արմատաքի քանդել, և այսօր ալ Կովկասեան գաւառներուն մէջ Հայ համէշականութեան գլխաւոր տեղերէն մէկը՝ Ախլցխա է։*

**ՊԱՅԱՋԻՏԻ ՄԻՋԱԴԷՊԸ**

**2099**. *Ցիշեցինք վերեւ թէ Օսմանեան կառավարութենէ սաացուած հրովարտակներէն երրորդը ընդհանուր էր (§ 2097)։ Սիմէոն զայն գործածեց Բագրեւանդի վիճակին մէջ սկսած համէշադաւանութեան դէմ, և ուղղակի դիմեց Պայազիտի կուսակալ Ապտի փաշային, որ է նոյն ինքն Սիմէոնի միջնորդութեամբ ազատութիւն սաացող Ապտի պէյը (§ 2091)։ Կուսակալը պետական հրամանին հպատակելով, նախապէս ձերբակալեց գլխաւորներէն եօթը հոգի, որք են, Պօղոս՝ Ղարասու, Գրիգոր՝ Նաւիկ, Խաչատուր՝ Մօլլասիւլէյման, Յարութիւն՝ Միրանկ և Ղազար՝ Գարսան գիւղերու քահանաներ, Բրնձիք՝ Գարսանցի սարկաւագ. և Մաթոյ՝ աշխարհական (ՋԱՄ. 42)։ Ասոնք յանձնուեցան Բագրեւանդի կամ Իւչքիլիսէյի առաջնորդ Զաքարիա վարդապետին Էջմիածին տարուելու համար, բայց որովհետեւ վարդապետը կը յապաղէր Էջմիածնեցի արշաւանքներէն վախնալով. Սիմէոն 1769 օգոստոս 16'ին կը գրէր [illegible] թէ վտանգ չկայ, ուստի [illegible]։ Ըստ այնմ ալ անմիջապէս բերաւ Զաքարիա, և օգոստոս 18'ին շնորհակալութեան գիր գրուեցաւ Ապտի կուսակալին (ԴԻՒ. Ը. 69)։ Եկողներ շատ յամառ չեղան իրենց միտքին վրայ. և [illegible], ուստի Զաքարիա վարդապետ, սեպտեմբեր 14'ին, Խաչվերացի երկրորդ օրը, Գրիգոր և Խաչատուր քահանաները միասին տանելով Էջմիածինէ մեկնեցաւ (ԴԻՒ. Ը. 86)։ Մնացեալներ քիչ մը եւս մնացին Էջմիածին, բայց վերջապէս անոնք ալ [illegible] Սիմէոն [illegible] (ՋԱՄ. 42), զի ինչպէս ինքն ալ կը գրէր, ոչ վրէժխնդիր և ոչ հալածող հոգւով կը գործէր, [illegible] կ'աշխատէր (ԴԻՒ. Ը. 77), որ իրեն յանձնուած քրիստոնէական փարախին հետեւողներ զգաստանան, Հայաստանեայց եկեղեցւոյ ուղղափառ և ուղղադաւան հաւատքը անախտ պահուի, և արտաքին դրդումներով խզուր բաժանումներ և հակառակութիւններ չտարածուին Հայութեան մէջ։ Այդ մասին ոչ ոք կրնայ մեղադրել եկեղեցւոյ մը պետին ունեցած նախանձայուզութիւնը, զոր ամեն պետերու վրայ ալ յարգելէ չէինք քաշուիր, եթէ իրենցներուն պահպանութեան նուիրէին բոլոր ջանքերնին, և ոչ թէ ուրիշ եկեղեցիներու գործերուն խառնուէին, և արտաքին հրապոյրներով տիրապետութեան դիտումներ մշակէին։*

**ՅՈՎՆԱՆ ԱՄԴԵՑԻ**

**2100**. *Սիմէոն միեւնոյն ուղղութեամբ վարուեցաւ եպիսկոպոսներէ և վարդապետներէ ոմանց հետ ալ, որոնք զանազան դիտումներէ մղուած համէշականութեան մէջ իրենց զբաւթիւններ գտնել կարծեցին։ Այսպէս եղաւ Յովնան Ամդեցի՝ Գլակայ առաջնորդ, որուն անունը իբր կաթողիկոսական ընտրելի յիշուեցաւ Շամախեցիի մահուընէ ետքը (§ 2069)։ Բայց աւելի քան ընտրելի, ինքընծայ յափշտակիչ մը երեւցած էր, և մինչեւ իսկ [illegible] կոչում առնելու, ու հայրապետական ձեւեր գործածելու յանդգնած էր (ԴԻՒ. Գ. 271)։ Անշուշտ այդ նպատակին մէջ յուսախաբ մնալը զինքն դրդեց օտար ճանպայ երթալ, և սկսաւ համէշական ուղղութեան շնորհիւ՝ Մայրաթոռէ և Սիմէոնէ անկախութեան ճանպայ փնտռել. առաջնորդներ կը փոփոխէր, ուխտաւորներ կը կողոպտէր. հայրապետական կոնդակներ կը գրէր. և շնորհներ բաշխելու կը յանդգնէր, եկեղեցական պաշտօններ և հարստութիւններ կը գրաւէր (ԴԻՒ. Գ. [illegible]), նուիրակներ կը ղրկէր ամէն կողմ, Ս. Կարապետի անունը կը շահագործէր, և Ալայլէտինպէյզատէ Մաքսուտ պէյ [illegible] կամ տեղական բռնապետը իրեն շահերուն մասնակից ընելով՝ աղիկամի կը գործէր (ԴԻՒ. Գ. 543)։ Սիմէոն ուժգին զինեցաւ անոր դէմ, և բրած անկարգութիւնները տասր որոշ գլուխներու վերածելով. [illegible]*

*զբանադրանաց թուղթ լուրջ նզովից և անլոյծ կապանաց, և մերկացոյց զնա ի շնորհէ և ի կարգէ* (Դիւ. Գ. 226)։ *Հայրապետական սաստը իրեն արդիւնքն ունեցաւ, զի Յովհան շատ մը Կարնեցի գլխաւորներ միջնորդ ձգելով, էջմիածին դիմեց, Ակոռի գիւղը կաթողիկոսին հանդիպելով, ձեռամբ զղջման և կատարեալ մեղայիւ և յորդորանօք արդարոյ ներում խնդրեց* (Դիւ. Գ. 286), *և յետոյ Մայր տաճարին մէջ հանդիսաւոր խոստովանութեամբ և օրհնութեամբ ընկալաւ զթողութիւն և զարձակումն* (Դիւ. Գ. 290), *և Կ-Պոլիս գնաց, անկէ ալ նորէն իր առաջին առաջնորդութեան դարձաւ* (Դիւ. Գ. 754)։ *Նմանօրինակ զգուշաւորութեան գործեր աւելի ունեցաւ կատարել Սիմէոն ուրիշ տեղերու, և գլխաւորապէս Կարսի, Արաբկիրի, Տիարպէքիրի, Արղունիի վիճակներուն վրայ ալ* (Դիւ. Գ. 1ԺԵ)*. բայց մենք զանց կ'ընենք, մանաւոր պարագաներով պատմութիւններու չծանրաբեռնելու համար։*

**2101.** *Սիմէոն միեւնոյն նախանձայուզութենէ ազդուած, և միանգամայն ծիսական սովորութեանց մէջ ալ պէտք կարծած բարեկարգութիւնները մուծանելու փափաքով, տօնական կարգադրութեանց ալ ձեռնարկեց, մէկ կողմէն հաստատուն կանոններ, և միւս կողմէն պատշաճ փոփոխութիւններ մտցնելու միտքով։ Թէպէտ կանուխէն ալ ինքը այդպիսի դիտումներ ունէր, սակայն գործադրութեան շարժառիթ և քաջալեր տուաւ Կ-Պոլսոյ պատրիարք Գաամաճեանը, ժողովուրդի անունով գրուած մէկ գիրով, որուն մէջ խնդրէր և աղերս կը մատուցանէր. կարգել տօն գիւտի նշխարաց սրբոյն Գրիգորի Լուսաւորչին՝ կիւրակէ։ Կ-Պոլսոյ մէջ այդ փափաքին շարժուելուն ուրիշ առիթ չենք գտներ, բայց եթէ այսպիսի սովորութեան հաւմէտաւանններուն կողմէ սկսուած ըլլալը, ինչպէս կրնայ քաղուիլ Վենետիկի Մխիթարեաններուն օրացոյցներէն։ Հայոց եկեղեցիին ծիսական կարգերը զննելով կը տեսնուի, որ անոր հնաւանդ կանոնները կիրակէներէն դուրս հրամայեալ տօն կամ կիրակէ պահելու օրէնք ունեցած չեն, մանաւանդ՝ մեծ պահոց՝ տօներու համար։ Նոյն իսկ Աստուածայայտնութեան և Համբարձման տօներուն ալ կիւրակէին փոխադրուիլը, հեշտ կերպով կը քաղուի կրօնական և ծիսական պատշաճներէն, ինչպէս ցորդ կ'ընենք Պայծառակերպութեան ու Վերափոխման ու Խաչվերացի տօներուն համար։ Այդ կէտին պարզաբանութիւնը մեր զբաղուցութեանց կրնայ տանիլ, ուստի բաւական ըլլայ գիտնալ, որ Լուսաւորչի շաբաթ օրը կիւրակէ պահելու սովորութիւնը մինչև* 1766 *չկայ եղեր։ Շարթուան մէջ կիւրակէներ յունական և լատինական սովորութիւն են, և լատինամիտ Հայեր ալ՝ լատինական նմանողութեամբ և Հայ եկեղեցին իրր համեմատութեան ցուցնելու կանխամտածութեամբ, Գիւտնշխարացի օրը կիրակէ պահելու սովորութիւնը մտած կ'ըլլան։ Կ-Պոլսոյ Հայ ժողովուրդն ալ անոնցմէ վար չմնալու դիտմամբ նոյնն ընելու համար կաթողիկոսին դիմելու որոշումը կու տայ։ Սիմէոնի միտքն ալ այդ մասին նախապատրաստուած պէտք է ընդունինք, որ ոչ միայն արդարև յոյժ օրինաւոր խնդրէր կը գտնէ առաջարկը, այլ և արժանի առնել տօն զհնգերեքեան կոչուել* (Դիւ. Գ. 426)։ *Ուստի խնդրեմ ի յոյժ ցնծացեալ, զթուղթ գրեալ ընդհանրապէս առ ամենայն ազգս Հայոց, ոչ միայն Լուսաւորչին տօնը մէկ օրով, այլ Հայոց լուսաւորութեան յիշատակը փառաւորել է տօնօքն հինգ աւուրբք, որք են Լուսաւորչի Մուտն ի վիրապը՝ Մեծ պահոց հինգերորդ շաբաթ օրը, Ելն ի վիրապէն՝ Համբարձման առաջին շաբաթ օրը, ու Գիւտնշխարացը՝ Համբարձման երրորդ շաբաթ օրը, Թադէոսի և Սանդխտոյ տօնը Վարդավառի առաջին շաբաթ օրը, և Առաջին Լուսաւորչաց Թադէոսի և Բարթողիմէոսի տօնը* (Դիւ. Գ. 427)։ *Այս ընդհանրական գրուած ըլլայ 1766 ապրիլէ առաջ, վասնզի անկէ ետքը կը յիշուին Կոստանդնուպոլիս հասած թուղթերը յաւուր հրաշափառ Յարութեան Տեառն ի սուրբ զատկին* (Դիւ. Գ. 428), *որ այն տարին ապրիլ 23'ին կը հանդիպէր։*

**2012.** *Վերոյիշեալ հինգ տօներէն վերջինը, հիմակուան պէս՝ Առաջին լուսաւորչացն մերոց Թադէոսի և Բարթողիմէոսի բացատրութեամբ հին տօնացոյցին մէջ չէր գտնուեր* (ՏՕՆ. 266), *այլ միայն՝ Առաքելոցն Բար-*

ԼՈՒՍԱՒՈՐՉԱՑ ՏՕՆԵՐ

Բարթողիմէոսէ և Յուդայէ տօն մը կար Յինանկաց երրորդ երեքշաբթի օրը՝ Ս. Յակոբայ շաբաթապահքին մէջ։ Սիմէոն

**ԱՌԱՋԻՆ ԼՈՒՍԱՒՈՐԻՉՔ**

առաջնորդուելով այն միտքէն, թէ Հայոց լուսաւորիչ Թադէոսը՝ Յուդա-Թադէոս առաքեալն է (§7), Յուդա անունը Թադէոսի կը փոխէ։ Միանգամայն կը մտածէ թէ վայել չէ նշանաւոր տօն մը պահոց օրը թողուլ, և թէ յարմարագոյն է մեծ սուրբերուն նման է շաբաթու տօնէ նոցին, ուստի կը հրամայէ որ Բարթողիմէոսի և Թադէոսի տօնը փոխադրուի՝ Յինանկաց երկրորդում շաբաթու շաբաթի աւուրն (Դիւ. Գ. 427), զոր այժմ Յինանկի առաջին շաբաթ կը հաշուենք (ՏՕՆ. 266), և այն օր տօնուող Անդրէաս առաքեալը միացուի Փիլիպպոս առաքեալին հետ Խաչի իններորդ շաբաթ օրը (ՏՕՆ. 257)։ Իսկ բաց մնացած՝ Յինանկաց երրորդ երեքշաբթի օրուան բերուի, Կուսնեղիոսի ու Շմաւոնի ու Պօղիկարպոսի տօնը (ՏՕՆ. 271) որ առաջ Աստուածայայտնութենէ ետքը Ապայից կարգը կը մնար։ Այս առթիւ հարկաւ մտածած կ'ըլլայ, որ Մուսոն ի վիրապի տօնն ալ յարմար չէր Մեծպահքին մէջ թողուլ, բայց չատ ծանօթ և ընդհանրացեալ օր ըլլալուն չհամարձակիր տեղափոխել, այլ կը գոհանայ հրամայելով, որ տօնն Քոցեն զօյն սեղանն՝ յորում յայնմ աւուր պղատարութ էցեն մատուցանելոց, և յերկրորդ շաբաթին Ծննդ-հանդիսի ընթացաւորել արարեալ, յառաջ առաւօտու շաբաթուն է տօն ժողովրդեան մատուցեն զպատարագն (Դիւ. Գ. 427)։ Այդ կարգադրութիւնները Սիմէոնի նախափորձերը եղան տօնացոյցի մէջ փոփոխութիւններ մուծանելու, որոնք քիչ ետքը պաշտօնական և վերջնական կերպարան առացան տօնացոյցի ամբողջական տպագրութենէն ետքը։ Զենք կրնար որոշակի ցուցնել թէ ինչչա՞փ և ո՞ր տեղեր գործադրութեան մտաւ Սիմէոնի օրինադրած նորութիւնը, այն է տարեկան հինգ օր կիրակէանալ Հայոց լուսաւորութեան պատուոյն։ Ինչ որ մենք գիտենք այն է, թէ Կ-Պոլսոյ մայրաքաղաքը որ նախաձեռնութիւնն առած էր տարեկան օր մը միայն կիրակէանալու, իր առաջարկին վրայ մնաց, Գիւտնշխարացը պահեց, իսկ միւս հոյս օրերը չպահեց։ Այս կէտը կը հաստատուի Կ-Պոլիս հրատարակուած օրացոյցներով, որոնց մէջ առաջին անգամ 1890'ին երեւցան տօնական խաչանիշները Ելն-ի-վիրապէն և Առաջին-Լուսաւորչաց օրերը, որոնցմէ առաջինը խափանուեցաւ 1898'էն ետքը, և Գիւտնշխարացին վրայ միայն Առաջին-Լուսաւորչաց տօնը աւելցած մնաց։ Իսկ օրերու փոփոխութիւնները կրցան գործադրուիլ նոր տօնացոյցի տպագրութենէն ետքը, այն ալ ոչ առանց խնդիրներու, ինչպէս պիտի տեսնանք։ Սիմէոնի սոյն ձեռնարկին վրայ դիտողութիւննիս կը պահենք ամբողջաբար ընել՝ տօնացոյցի տպագրութիւնը պատմելնէս ետքը։

**2103.** Սիմէոնի բարեկարգական ձեռնարկներուն կարգին պիտի յիշենք նաեւ

**ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ ԿԱՆՈՆՆԵՐ**

առաջնորդութեանց մասին դարձուցած մտադրութիւնը։ Յաւով նկատած էր աչալուրջ հայրապետը որ առաջնորդներէն քանիներ, ուխտադրեալ կեղծաւորական յետոյ Էջմիածինէ ստուգած և պաշտօն ստանալնէն ետքը, զուրջացեալ զերեայ պարտմննեցան և օտարացան անկէ, ոմանք յայտնի ըմբոստութեան սկսան՝ ինչպէս Կարսի Աբրահամ եպիսկոպոսը, ուրիշներ դաւանութենէ հեռացան, ինչպէս Ախլցխայի Գէորգը (§ 2097), ուստի պէտք տեսաւ իբր նախազգուշական միջոց, եպիսկոպոսական ձեռնադրութեան եկողներէ յատուկ ուխտագիր առնել ապագայ ընթացքներուն համար։ Առաջին գործադրութիւնն ըրաւ 1765 ապրիլ 3 զատկին օրը՝ եպիսկոպոս ձեռնադրուող Կարնոյ առաջնորդ Պաղտասարի և Բասենի առաջնորդ Աւետիքի վրայ (Դիւ. Գ. 154), որոնց ձեռնադրութեան մէջ ընկերացաւ Մայրաթոռոյ միաբաններէն Գրիգոր Սանահնեցին, որ յիշուեցաւ Սիմէոնի ընտրութեան առթիւ (§ 2073)։ Նոր ձեռնադրուող առաջնորդներէն ուխտագիր առաւ հետեւեալ չորս պայմաններու վրայ։ 1. Մնալ յօր մահուան ի վանսն որոյ վերայ ձեռնադրի։ 2. Անխոտոր կալ ի հաւատ և յուղիղ դաւանութեան Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ։ 3. Պահել հնազանդութեամբ ընդ սրբոյ աթոռոյն և գործակալաց նորին։ 4. Մի՛ զոք ի վիճակի իւրում առանց ընտրութեան և հաւանութեան և կամաց գլխաւոր իշխանաց և քահանայից և ժողովրդոց

[illegible]։ Իսկ իւր վիճակէն դուրս եղած առեն, կամ թէ ուրիշ վիճակէ մը իրեն եկած առեն, [illegible]։ Նոյնպէս վանականութեան համար ալ, [illegible], մինչեւ որ նա [illegible]։ Այդ պայմաններուն դէմ անսաստած առեն, ուխտադիրներ յանձն կ'առնէին, ենթարկուիլ [illegible]՝ [illegible] տեղւոյն, ուր որ գտնուին։ Այդ ուխտագիրի ձեւը արձանագրուեցաւ ալ [illegible]՝ (Դիւ. Գ. 166)։ Այստեղ յիշենք թէ [illegible] էր եղած [illegible] (Դիւ. Գ. 22), և մինչեւ իսկ Կարսի Աբրահամ եպիսկոպոսին գալ չուզելուն համար, Սիմէոն [illegible] գայն, որով նա ալ [illegible] էր (Դիւ. Գ. 36)։ Վերոյիշեալ կարգադրութիւններէն Մայրաթոռ այցելելու պարտքը այժմ իսպառ մոռացութեան ինկած է, դաւանութեան և հաւատարմութեան ուխտերը, և ձեռնադրութեանց մասին կանոնները կը մնան, միայն աթոռը թողլու և հրաժարելու խնդիրը իւր նշանակութիւնը կորուսած է, քանի որ Ռուսահայոց համար աթոռի անունով ձեռնադրութիւնն ալ ջնջուած է։ Իսկ Տաճկահայոց մէջ քաղաքական և ազգային պատահարներ, եկեղեցական պահանջներէ անկախաբար, սաէպ հրաժարելու կամ հրաժարեցնելու կը ստիպեն։ Եպիսկոպոսական ձեռնադրութեանց հաստատուն կերպով աթոռի մը հետ կապուելուն հնօրեայ կանոնը՝ իրեն ծագումն ունէր, եպիսկոպոսացուներուն անբաժնելաբար նոյն վիճակին քահանայական դասէն առնուելէն, ինչ որ այժմ խափանուած է, և եպիսկոպոսներ կամ առաջնորդներ շատ անգամ հեռաւոր վանքերու միաբաններէն կ'առնուին։ Միւս կողմէն վիճակներու կարեւորութեան և վիճակաւորներու փորձառութեան պատճառներն ալ կը պահանջեն, որ առաջնորդներ նոյն համեմատութեամբ զարգանան։ Ո՛չ անփորձներ կարեւոր վիճակներու նշանակուին և ո՛չ փորձառուներ երկրորդական վիճակներու մէջ փակուին։ Այդ տեսութիւններ ուրիշ եկեղեցիներու մէջ ալ [illegible] ստացած են, և Յոյն ու Լատին եկեղեցիներն ալ ընդունած են վիճակաւորները աստիճանաբար բարձրացնելու դրութիւնը։ Սիմէոնի ձեռնարկներէն իւր վերջին տարիներուն մէջ տեղի ունեցածները՝ վերջէն գրելու պայմանով, քիչ մըն ալ ուրիշ աթոռներու մէջ այդ միջոցին տեղի ունեցած անցքերը քաղենք։

**2104.** Կիլիկիոյ աթոռին մասին վերջին անգամ յիշեցինք Միքայէլ Աջապահեանի մահը, և իւր եղբօր Գաբրիէլի յաջորդելը 1758'ին (§ 2050), երբ Մայրաթոռ դատարկ էր, որով թէ Շամախեցիին առեն և թէ Երեւանեցիին առջի տարիները Գաբրիէլն էր Սսոյ գահակալը։ Գաբրիէլ հեռու մնաց այն ձգտումներէն զորս ունեցած էր Միքայէլ, իւր իրաւասութեան սահմանները ընդարձակելու, Էջմիածնի հպատակ վիճակներէն մաս մը իրեն վրայ դարձնելով, մանաւանդ թէ բոլոր Տաճկահայոց կաթողիկոս ճանչցուիլ կ'ուզէր, պնդելով թէ [illegible]՝ [illegible] Օսմանցւոց է, [illegible] (ՋԱՄ. 99)։ Սակայն Կ-Պոլսոյ մեծամեծներ իրեն քաջալերութիւն չտուին, և մինչեւ իսկ [illegible] Միքայէլը [illegible], և այս պատճառով Երեւանցիի գրիչին ներքեւ [illegible] կը կոչուին այս անգամ, մինչ ուրիշ պարագայի մէջ (§ 2085) համակիր եղած չէր Կ-Պոլսոյ ազգայնոց մասին։ Սիմէոնի հակակիր զգացումին հետեւանք կը սեպենք մայրաքաղաքի եկեղեցականներուն և Նալեան պատրիարքին վրայ գրած մեղադրանքը, թէ Միքայէլի ձգտումներուն օգնեցին [illegible], և մանաւանդ [illegible] էր ի Կոստանդնուպոլիս. որովհետեւ եթէ Միքայէլ [illegible] հեռացուեցաւ, անշուշտ պատրիարքն էր եղած հրովարտակը հանել տուողը։ Իբրեւ Կ-Պոլսոյ պատրիարքն ու եկեղեցականները մասնակցեցան Ջահկեցիին դէմ եղած հակառակութեանց,

ԿԻԼԻԿԻՈՅ ԱԹՈՌ

այլ ոչ երբեք Մայրաթոռին դէմ մրցեցան, ինչպէս և [illegible] Ջահկեցիին դէմ խռովութիւն հանելը, երբեք իբր Սսոյ աթոռին նպաստաւոր շարժում մը չկրնար մեկնուիլ։ Անգամ մը որ Միքայէլին ճիգերը անյաջող մնացին, Գաբրիէլ անոնք վերանորոգել չուզեց, և այս կողմէն հաշտ յարաբերութիւններ շարունակեցին, [illegible], կը գրէ Սիմէոն իւր ժամանակին համար (ՋԱՄ. 99)։ Գաբրիէլի գործունէութենէն բան մը պիտի չկարենանք գրել առձեռն տեղեկութիւններ պակսելուն համար, բայց նշանաւոր արդիւնք մըն ալ ունեցած չերեւիր, զի ունեցած ալ գիւրութիւն չունէր՝ ընկճուած ըլլալով Գօզանօղլուներու տեղական բռնապետութեան ներքեւ։ Նոյնիսկ Գաբրիէլի կեանքը զոհուեցաւ այդ բռնութեանց, վասնզի Սսոյ վանքին վրայ խուժող լեռնականները, զորս [illegible] կը կոչէ յիշատակագիրը, կաթողիկոսին ալ չխնայեցին, և զարկին սպաննեցին 1770 սեպտեմբեր 10'ին, Խաչի շաբաթապահքին ուրբաթ օրը։ Միւս օրը, շաբաթ առտուն, հազիւ թէ վանքին մէջ եղողներ՝ սպանեալ կաթողիկոսը թաղեցին [illegible], ահա նոր յարձակում մը կրկին Սսոյ վանքը Գօզանօղլուի անուանձ վոհմակներէն, որոնք [illegible], միաբանները կը խոշտանգէին և կը կոչկոճէին, այնպէս որ [illegible], խեղճ միաբաններ չուարած էին [illegible]։ Տասն օրերէն վերջ յարձակում մը կը նորոգուի, և Գօզանօղլուն [illegible] կը դրկէ վանքին վրայ կողոպտելու և կոտորելու, բայց երբ միաբաններ ինքզինքնին արդէն գերեզմանի մօտ կը կարծէին, յարձակողներէն [illegible] զազար կուտան տագնապին, և վանքին մէջ եղողներէն ոմանք աւիթ կը գտնեն, զուրս ելլել և Ատանա ապաստանիլ։ Փախչողներուն գլուխն էին Մարկոս քահանայ Աջապահեան, վերջին երեք կաթողիկոսներուն եղբայրը, անոր որդին Եփրեմ եպիսկոպոս, այն որ չփոխթ անցնելէն ետքը կաթողիկոս ընտրուեցաւ, և 1771 տարւոյն սկիզբները Սիս դառնալով օծումն առաւ (ՍԻՍ. 219), թէպէտ այլուր 1772 նշանակուած կը գտնենք (ՊԱՍ. 22), իսկ ինքն Եփրեմ իւր ազգաբանութիւնը կը կազմէ առանց թուականներու։

2105. Աղթամարի աթոռին վրայ թողուցինք Գրիգորը իւրայիններէն ընտրուած, որուն մասին դիտողութիւն չըրին կամ չկրցան ընել Մայրաթոռոյ գահակալները, և այսպէս խաղաղութեամբ վախճանեցաւ նա 1761'ին (§ 2018)։ Գրիգորի կը յաջորդէ Թովմաս, միշտ իւրայիններուն ընտրութեամբ և Ջահկեցիի օրով դրուած պայմանին հակառակ, սակայն Թովմաս պէտք կը զգայ Մայրաթոռոյ պաշտպանութեան, և հաստատմիտ որոշմամբ մը, չենք գիտեր [illegible], կ'ելլայ անձամբ Էջմիածին կու գայ, և ինքնայօժար պատրաստականութեամբ [illegible]։ Մինչեւ իսկ կիրակի օր մը [illegible], և [illegible]։ Յակոբ Շամախեցի կաթողիկոս [illegible] Թովմասն ու իւր խոստովանութիւնը, և [illegible], և հայրապետական կոնդակով կը հաստատէ Թովմասը իւր աթոռին վրայ, և կը վերանորոգէ [illegible], որք Ղազարի և Նիկողայոսի օրով հաստատուած էին (§ 2018), և այլ ուրիշ [illegible] կը հրամայէ, զի Աղթամարցիք [illegible], և այսպէս [illegible] կը դարձնէ Թովմասը իւր աթոռը։ Երեւանեցին կը վկայէ թէ ցորչափ Թովմաս Աղթամարի կաթողիկոս մնացած է, տուած ուխտը յարգած է, և թէ ինչպէս նախորդին՝ նոյնպէս իւր օրով ալ [illegible]։ Թէպէտ Թովմաս պէտք ունեցած առեն նուիրները կը խնդրէր, [illegible], սակայն Էջմիածին [illegible] կը ղրկէր, և խնդիր չէր յուզուեր (ՋԱՄ. 97)։ Թովմաս 1764 դեկտեմբերին նոր դիմում մը կ'ընէ Սիմէոնի, գանգատելով Աբրահամ Մոկացի վարդապետին դէմ, որ իրեն համամիտ գտնելով Մարգարէ վարդապետ մըն

*ալ, և իրեն հովանաւոր և պաշտպան ընելով Մոկաց Քուրդ բռնապետ Աւդուլլախանը, հետամուտ էր* [illegible] *Թովմաս կը խնդրէր որ Սիմէոն Աբրահամը բանադրէ, մինչ միւս կողմէն Աւդուլլա և Աբրահամ ալ յատուկ գիրերով դիմում կ'ընէին, որ Մոկաց գաւառը զատ և ուրիշ կաթողիկոսութիւն ընէ, իբր զի* [illegible] *Սակայն Սիմէոն ամուր մնաց օրինականութիւնը պաշտպանելու, գրեց* [illegible] *Աւդուլլայի ալ գրեց իր առաջարկին եկեղեցւոյ օրինաց հակառակ ըլլալը, և Վանի առաջնորդին և Նուիրակին ալ պաշտօն յանձնեց թուղթերը հասցնել և գործին հսկել* (ԴԻՒ. Գ. 116-119)։ *Առաջին գիրերուն՝ որ* 1765 *յունուար* 10*'ին գրուած էին, ժամանակին տեղը հասած չըլլալուն, նորեր ղրկեց մարտ* 14*'ին* (ԴԻՒ. Գ. 152)։ *Հրամաններն ու սաստերը իրենց ազդեցութիւնն ունեցած պիտի ըլլան, որ այլեւս Աղթամարի խնդիր յուզուած չէ և Աբրահամը բանադրելու պէտք մնացած չէ։ Թովմայի վախճանը կը դրուի* 1783*'ին* (09 ՕՐԱ. 288)։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱԹՈՌ**

**2106**. *Երուսաղէմի աթոռին պատմութիւնը տուած ենք մինչեւ Կարապետ Գանձակեցիի պատրիարքութիւնը* 1762*'ին* (§ 2062)։ *Կարապետի օրերը վէճերով անցան Սուրբ Տեղեաց խնդիրներով՝ Յոյներու և Լատիններու և Երուսաղիմացիներու անհիմն պահանջմանց և ոտնձգութեանց պատճառով, որոնց ելքը միշտ յաջող եղաւ, Կարապետի աչալուրջ գործունէութեան և Կ-Պոլսոյ աթոռէն ընձեռուած օգնութեանց շնորհիւ, որոնց մանրամասնութեան մտնել զանց կ'ընենք։ Կարապետ իւր պաշտօնավարութիւնը արդիւնաւորեց նաև կարեւոր նորոգութիւններով, թէ Ս. Յակոբեան մայրավանքին և ազգային փոքր վանքերուն վրայ, և թէ Ս. Յարութեան տաճարին վրայ։ Սակայն ոտնձգութեանց դէմ մաքառումները և նորոգութեանց ծախքերը ստիպեցին զինքը* [illegible] *ուստի* 1765 *տարւոյ գատիկէն ետքը, որ ապրիլ* 3*'ին կը հանդիպէր, Յովակիմ Քանաքեռցի վարդապետը Կ-Պոլիս ղրկեց իբրեւ փոխանորդ, որ զինքն ու աթոռը պարտքերուն տագնապէն ազատելու աշխատի։ Սակայն Գրիգոր Պասմաճեան պատրիարք ցուած էր Կարապետի դէմ,* [illegible] *էր, ուստի մեծամեծաց ժողով ալ գումարեց, որուն մէջ պաշտօնապէս* [illegible] *և որոշեցին փոխառութեանց կնիքն ալ անոր ձեռքէն առնել։ Այդ ժողովին և որոշումին թուականը ցուցուած է* 1765 *օգոստոս* 28 *օրը։ Այսուհանդերձ Կարապետ շարունակեց իւր պաշտօնը վարել, մինչեւ իւր մահը* 1768 *յունուար* 24*'ին, երբ նախընթացաբար ցուցուած հաշուով* (§ 2062) *դեռ* 60 *տարեկան իսկ եղած չըլլար, և իբրեւ սովորական բացատրութիւն մը միայն ըսուած կ'ըլլայ իրեն համար, թէ* [illegible] *հազիւ* 6 *տարի պատրիարքութենէ ետքը* (ԱՍՏ. Բ. 103)։

**ՊՕՂՈՍ ՎԱՆԵՑԻ**

**2107**. *Կարապետի յաջորդեց Պօղոս Վանեցի, միաբանութեան ընտրութեամբ և Կ-Պոլսոյ աթոռին և մեծամեծաց հաւանութեամբ, և հաստատուեցաւ* 1768 *ապրիլ* 12*'ի հրովարտակով։ Պօղոսի նախընթացին մասին իւր ինքնագիր յիշատակարանէն քաղելով կը պատմուի, թէ տակաւին մանկահասակ Երուսաղէմ եկած է Շղթայակիրին օրով, Արեւելցի ուխտաւորներու մեծ կարաւանի մը հետ, որուն մէջ կային իբրեւ* 700 *անձինք, Մշոյ առաջնորդ Աբրահամ Խոշաբեցին, Յակոբ Գալաթցի, Գաբրիէլ Պրուսացի և ուրիշ վարդապետներ, և Դամասկոսէ կարաւանին ուզած էր ընկերանալ կուսակալ Իսմայիլ փաշան ալ* (ԱՍՏ. Բ. 104)։ *Պօղոսի հայրը Մարգարա՝ Աբրահամի և ուրիշներուն միջնորդութիւնը կը գործածէ, որ իւր մանկահասակ որդին միաբանութեան մէջ ընդունել տայ, ինքն ալ վանքին պարտիզպանութեան կը մտնէ։ Բայց երբ Մարգարա կը մեռնի, Պօղոսի հօրեղբայրը կու գայ ու տղան Վան կը դարձնէ, բայց Պօղոս եղանակը կը գտնէ նորէն Երուսաղէմի միաբանութեան դառնալու* 1734*'ին, որ առեն կրնանք զինքը մերձաւորաբար* 20 *տարեկան ըսել։ Քիչ ետքը*

սարկաւագ, չորս տարիէ վարդապետ կը ձեռնադրուի։ Առաջին անգամ նուիրակութեան կ'ելլէ 1744'ին, առաջ Վան, վերջէն Եւդոկիա և այլուր, մինչև եպիսկոպոս ձեռնադրուիլը 1752'ին Մինաս կաթողիկոսէ։ Թէոդորոս պատրիարքի օրով ալ նուիրակութեանց կը պտտի Խրիմ, Ռումէլի, Զմիւռնիա և Նիկոմիդիա, իսկ Կարապետի օրով վանքին մէջ դարպասնկալի պաշտօնը կը վարէ, մինչև անոր տեղը պատրիարք ընտրուիլը, իրեն առաջին պաշտօնը փոխանցելով Սարգիս Ֆէրմանեան վարդապետին (ԱՍՏ. Բ. 105)։ Պօղոսի պատրիարքութիւնը տագնապներու և տառապանքներու հիւսուած մը եղաւ, իր բովանդակ եօթնամեայ տեւողութեան մէջ։ Մէկ կողմէն Եգիպտոսի բռնապետներէն Ալի պէկ Պաղեստինի վրայ յարձակեցաւ 1770'ին, Գազա և Ռամլէ գրաւեց ու աւարեց, Երուսաղէմը նեղեց, Յոպպէ ալ իրեն անձնատուր եղաւ 7 ամիս պաշարման դիմանալէ ետքը, և 1772 փետրուար 6'ին Ալի պէկ յաղթական քաղաք մտաւ և կոտորեաց զՀայերսն։ Ալի պէկի օգնական էր Աքիայի բռնապետ, Օմար-Դահա չէյխը, որ Պաղեստինի զանազան կողմերը կ'ասպատակէր, և Յոպպէի պաշարման ալ օժանդակեց (ԱՍՏ. Բ. 106)։ Միւս կողմէն Օսմանցոց և Ռուսաց պատերազմները կը շարունակէին Տնիէսթէրի և Դանուբի ափերուն վրայ, երբ մի ճիւղն ալ Միջերկրականի մէջ փոխադրուեցաւ, ուր եկաւ սարսափ ազդել 1769 սեպտեմբերին՝ Նեվայի գետաբերանէն մեկնող Ռուսական տորմիղը։ Պեղոպոնէս և Աստիկէ, Թեսաղիա և Եպիրոս ալ Օսմանցոց դէմ ելան Ռուսական առաջին տորմիղին երեւնալուն, որուն երկրորդ մըն ալ աւելցաւ քիչ ետքը Էլֆինսթօն (Elphinston) ծովակալին հրամանատարութեամբ։ Տարիներ տեւեցին, Արշիպեղագոսի կղզիներուն և ցամաքի նաւահանգիստներուն վրայ եղող պատերազմները, որոնց մանրամասնութեանց չենք մտներ, և թերեւս բնաւ ալ չյիշէինք եթէ այդ պատերազմներուն երեւէն ծովագնացութիւնը արգելուած և Երուսաղէմի ծովաչու ուխտաւորութիւններ խափանուած չըլլային։ Երբոր մէկ կողմէ Երուսաղէմ հրոսակէ կը նեղուէր, միւս կողմէն իրեն պէտքերուն գըլխաւոր զարման եղող ուխտաւորներու արգիլնքէն ալ կը զրկուէր։ Սուլտան Մուսթաֆա Գ այդ շփոթութեանց մէջ մեռաւ 1774 յունուար 21'ին, և իր եղբայրը սուլտան Ապտիւլ-Համիտ Ա հազիւ կրցաւ տագնապներուն վերջ տալ՝ 1774 յուլիս 21'ին Քիւչիւք-Գայնարճըի դաշնագիրով, որով Օսմանեանք Ռուսներու հովանաւորութեան կը թողուին Խրիմը ու Պուճաքը ու Քուպանը, անոնց կը յանձնէին Ազախու և Գըլպուրնուի ամրոցները, և կը հաւանէին Ռուսներու ազատ ծովագնացութեան բոլոր Օսմանեան ջուրերու մէջ, բաւականանալով ետ առնուլ Պեսարապիան, Մոլտավիան, Վալաքիան և Արշիպեղագոսի Ռուսներէն գրաւուած կղզիները (ԺՈՒ. 352-358)։ Պաղեստին որ պահ մը հանդարտած կը կարծուէր, կըրկին վրդովուեցաւ Եգիպտացի Ապու Տահապի արշաւանքով, որ 1775'ին, Երեւման խաչին օրը, մայիս 10'ին, և ոչ 7'ին (ԱՍՏ. Բ. 106), Յոպպէ ալ մտաւ և կոտոր մաշեաց զբնակիչս նորա, և բոլոր վանքերը աւերեց ու աւարեց։ Մինաս վարդապետ պատարագ ըրած ատեն գլխատուեցաւ, տեսուչ վարդապետը Ջրհորի մէջ պահուրտած տեղը բռնուեցաւ, ուրիշ 6 միաբաններ և 6 ուխտաւորներ Յոպպէի մէջ նահատակուեցան։ Գոյժը Պօղոս պատրիարքը ցնցեց, և յանկարծ խոռն ինչ ցաւօք խեղդեցաւ, ինչպէս տապանագիրին մէջ գրուած է, քանի մը օր ետքը մայիս 18'ին վախճանեցաւ։ Տրուած համառօտ տեղեկութիւնները բաւական են ցուցնել, թէ դառնութեանց ժամանակին ցաւերովը շարունակ տանջուած, և բոլոր իր պատրիարքութեան միջոցը տառապած, դժբախտ պատրիարքը ընդդիմացեալ էլոյ, անակնկալ մահուամբ կեանքն ալ կնքեց (ԱՍՏ. Բ. 107)։ Յաջորդին ընտրութեան վրայ առաջիկային պիտի խօսինք։

**2108.** Կոստանդնուպոլսոյ աթոռին վրայ երկար խօսելու ըլլալով, կը կանխենք քանի մը ցրիւ տեղեկութիւնները քաղել։ Կարեւոր եղելութիւն կը նկատենք Մխիթարի հիմնած միաբանութեան մէջ տեղի ունեցած պառակտումը, որ մինչև միաբանութեան երկուքի բաժնուելուն առաջնորդեց։ Վենետի-

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ԲԱԺԱՆՈՒՄԸ

կի միաբաններուն կողմէն հրատարակուած տեղեկութիւններ կը սիրեն լռութեամբ կամ քօղարկմամբ անցնիլ այդ պարագաներուն վրայէն, և մինչև իսկ նորագոյն հրատարակութեանց մէջ կը բաւականանան ըսել, թէ Ս. Ղազարու կամարէն վրայէն սեւ ամպեր անցան, և ներքին տարաձայնութեանց ժամանակ մի խռովեցուցին անոր պայծառ հորիզոնը, բայց թէ այդ տարաձայնութիւնք Մխիթարայ տնկածառներ կոճակը միշտ անկէ ամբողջեցին (ՑՈԲ. 51), այլ թէ ինչ էին այդ տարաձայնութիւնները, բացատրել չեն սիրեր, անշուշտ տեսակ մը զգուշաւորութեամբ։ Գրեցինք արդէն թէ Ստեփանոս Մելքոնեան աբբահօր ընտրութեան օրէն գլուխ տուած էին ներքին անհամաձայնութիւնք (§ 2031), որոնք փոխանակ մեղմանալու՝ շարունակ աճած և ընդարձակած էին, 1750 ապրիլ 6'էն սկսելով, որ է Մելքոնեանի ընտրութեան օրը։ Խնդրոյ նիւթ եղող կէտը վանական կանոնադրութիւնն է եղած, և Մելքոնեան կը մեղադրուի, իբր թէ Մխիթարի սահմանած կարգերը փոփոխել կ'ուզէր, և իւր նորաձեւութիւններով երիցագոյն միանձանց մէջ պառակտութիւն յառաջ կը բերէր (ՑՇՐ. 4)։ Այլ թէ ինչ էին Մխիթարի կարգերը, և ինչ Մելքոնեանի նորաձեւութիւնները, պիտի չկարենանք ճշդել, որոշ տեղեկութիւններ չգտնելով. միայն յայտնի կը տեսնուի թէ Մխիթարի կարգերը հաստատուն և որոշ հիմերու վրայ դրուած չեն եղեր, և միայն իւր անձնական հեղինակութեամբ յառաջացեր է իւր ձեռնարկը։ Մելքոնեան 1765'ին ատենները Սահմանադրութիւն մը կը կազմէ, և կ'աշխատի իւր պաշտօնին հետ այն ալ պապական իշխանութեամբ հաստատել տալ, առանց միաբանութեան հաւանութիւնն ունենալու։ Եօթը տարի շարունակ այդ գիտումին կը հետապնդէ իւրովի, և միաբանները անոր ընթացքէն ձանձրացած, 1772 մայիս 25'ին ժողովի կը գումարուին, և կը պահանջեն Մելքոնեանէ իւր ձեռնարկէն ետ կենալ, և հին Սահմանադրութեան պահպանութիւնը շարունակել. և երբ չեն յաջողիր անոր հաւանութիւնը ստանալ, կ'որոշեն Մելքոնեանը վար առնել և նոր աբբայի ընտրութեան ձեռնարկել։ Բայց Մելքոնեան, երբոր ներքին զօրութիւնը կը կորսնցնէ, արտաքինին պէտքը կը զգայ, տեղական Լատին արքեպիսկոպոսին պաշտպանութեան կը դիմէ, և անոր միջնորդութեամբ Վենետկոյ հանրապետութեան զինուորական ոյժը Ս. Ղազար կը հրաւիրէ, և իբրև ըմբոստներու գլուխներ հայր Աստուածատուր Պապիկեան և հայր Մինաս Գասպարեան միաբանները, բռնի վանքէն կը հանուին, և զինուորական հսկողութեամբ Վենետիկի հանրապետութեան սահմաններէն կ'արտաքսուին։ Ասով պառակտման նշանը կը տրուի, և վանքին մէջ եղող կամ վանքէ դուրս գտնուող միաբաններ այս ու այն կողմը կը սկսին յարիլ։ Այն օր Մխիթարի աշակերտութիւնը կազմող միաբաններէն 13'ը միայն կը մնան Մելքոնեանի կողմը, իսկ 19'ը Պապիկեանի կողմը կը յարին, սակայն վանքը Մելքոնեանի ձեռք կը մնայ և բաղմաթիւ հեռացողներն են որ օտարացած կը սեպուին (ՑՇՐ. 4)։

**2109.** Եղելութեան հոգին բացատրել և արժէքը գնահատել պէտք էր ստուգիւ, բայց հարկ եղած ներքին

**ԲԱԺԱՆՄԱՆ ՊԱՏՃԱՌԸ**

տեղեկութիւնները չունինք, թէպէտ երեւոյթներն ալ կրնան նոյն նպատակին նպաստել։ Մխիթարի սահմանած կանոններուն մէջ փոփոխութիւններ մուծանելու խնդիրին հետ (ՑՇՐ. 4), Հնդկահայոց մէջ հաւաքուած գումարի մը կիրառութեան խնդիրը կամ կերպն ալ խօսուած է (ՏԻՊ. 147). բայց անշուշտ, այս տեսակ ներքին ու մասնաւոր ու պատահական պարագաներէն աւելի, կշիռ ունեցած է ուղղութեան խնդիրը, որ կրցած է այդչափ ծանր հետեւանքի պատճառ ըլլալ։ Ապա թէ ոչ հարկ կ'ըլլար երկու կողմերուն վրայ ալ փոքրոգութեան և անլրջութեան արատը քսել։ Իսկ ուղղութեան խնդիրն ալ անշուշտ մէկ կողմէն հռոմէականութեան և միւս կողմէն Հայութեան հանդէպ պահուելիք կերպերն էին, որ խնդրոյ նիւթ կը կազմէին այն ատեն։ Մխիթարի անձնական ուղղութիւնը՝ հայասէր կողմ մը ունէր, բայց հռոմէականութեան մէջ փայլուն Հայութիւն մը կազմելու առեղծուածային գաղափարով կ'օրօրուէր (§ 2030)։ Եթէ այս էր Մելքոնեանի ալ դիտումը, հարկաւ որոշումը՝ անոր նը-

պատուաւոր կողմը պէտք է հակի։ Բաժանումէ ետքն ալ Մխիթարի այդ ծածուկ ոգին շարունակեց Վենետիկի մէջ, և հայկական ուսումներ նոր զարկ մը առին։ Նշանակութեան արժանի է, որ երեք գլխաւոր և արդիւնաւոր անուններ, ինչպէս են՝ Վրթանէս Ասկէրեան, Ստեփաննոս Ագոնց և Միքայէլ Չամչեան վարդապետները, Մելքոնեան բաժնին մէջ մնացին։ Ընդհակառակն Պապիկեանի հետ եղող բաժինը որ առուր իրեն հռոմէականութիւնը դէպի լատինամոլութիւն տարաւ, և ոչ միայն հայականութիւնը չբարձրացուց, այլեւ վարդապետութեամբ և ուսուցմամբ, ընթացքով և ուղղութեամբ, և նոյն իսկ ծիսական կերպերով և զգեստներով՝ կատարեալ լատինութեան կողմը քաջալերեց և անոր հետեւեցաւ։ Իրաւ է որ վերջին ժամանակներու մէջ՝ Կղեմէս Սիպիլեանի, Ղուկաս Տէրտէրեանի և Արսէն Այտընեանի ընդգրկած ուղղութիւնը, քիչ մը փոփոխեց Պապիկեանով սկսած ճիւղին ընթացքը, սակայն մինչեւ ասոնց ատենը, որ է ըսել դար մը ամբողջ, բոլորովին նախանձայոյզ հռոմէադաւանութիւնն էր այդ ճիւղին մէջ տիրողը, մինչ Մելքոնեանի հետ եղած ճիւղը հայասիրութեան խղճերուն և հայամոլութեան կերպերուն համար, նախանձայոյզներու հալածանքներուն և պապութեան խստութիւններուն ենթարկուեցաւ։ Վենետիկի մէջ Մելքոնեանով մնացած բաժինը, իր աշխատութիւնները կրկնապատկեց, և ուսումնական արդիւնաւորութիւնը շատցուց։ Ս. Ղազար կղզեակին մէջ տպարան ալ հաստատուեցաւ 1789'ին, մինչ անկէ առաջ միաբաններուն աշխատութիւնները Վենետիկի Իտալացի տպագրիչներուն ձեռքով կը հրատարակուէին։ Բաժանման թուականէն ետքը ազգային երկասիրութիւններով ծանօթ միաբաններ ալ ունեցան Վենետիկի մէջ, և 1772'էն ետքը երեւցածներուն մէջէն, ազգովին գովութեամբ յիշատակուած անուններ են, Գաբրիէլ Աւետիքեան, Խաչատուր Սիւրմէլեան, Յովհաննէս Զոհրապեան, Ղուկաս Ինճիճեան, Մկրտիչ Աւգերեան, Իգնատիոս Փափազեան, և Մանուէլ Ջախջախեան (ՑՈՒ. 219), որոնց ձեռնադրութիւնները առաջ են քան 1799 հոկտեմբեր 4 թուականը (ՑՈՒ. 220), այսինքն Մելքոնեանի մահուան թուականը (ՑՈՒ.52)։

**2110.** **ՎԵՆԵՏԻԿԻ ԲԱԺԻՆԸ**

Վենետիկ մնացող ճիւղին ուղղութիւնը յատկանշող, և կերպով մը բաժանման շարժառիթը մատնանշող պարագաներուն կարգին, կարեւոր կը սեպենք յիշել նաեւ այն մեծ խնդիրը, որ այդ միջոցին հռոմէադաւան Հայերուն մէջ կը յուզուէր, ու պապական ատեանին ալ ուշադրութիւնը գրաւած էր, և որուն մէջ Ս. Ղազարի միաբանութիւնը գլխաւոր դերն ունէր։ Անգամ մըն ալ կրկնենք, թէ այն ատեն Հայ հռոմէականներ տակաւին ինքնուրոյն կացութիւն չունէին, Հայ պատրիարքարանի մաս էին և անոր կը հպատակէին, և այդ պատճառով այն կրօնական գործողութիւնները և խորհուրդները, որ այդ կացութեան յատկանիշներն էին և վիճակագրական հետեւանք ունէին, պարտաւոր էին պատրիարքարանի պաշտօնեաներու ձեռքէն և պաշտօնական եկեղեցիներու մէջ ընդունիլ։ Այսպէս էին գլխաւորաբար մկրտութիւնը, ամուսնութիւնն ու թաղումը։ Լատին եկեղեցականներ և քարոզիչներ այդ ընթացքը իբր հերետիկոսներու հետ հոգեւոր հաղորդակցութիւն կ'անուանէին և կ'արգելէին, մինչեւ իսկ ընդունուած խորհուրդները անվաւեր և ապօրէն կը հռչակէին։ Իսկ Հայ հռոմէական ազգայիններ՝ ինքզինքնին նոյն իսկ քաղաքականապէս՝ ստիպուած կը զգային, բայց Լատիններու և լատինամոլներու թելադրանքներու հանդէպ ալ խղճի խայթով կը տանջուէին։ Ուստի գաղտնի գործողութեանց ստիպուելով, կամ Լատին եկեղեցիներ կը դիմէին, կամ տուներու մէջ գաղտնի խորհուրդներ կատարել կու տային հայ-հռոմէական եկեղեցականներու ձեռքով։ Այդ գաղտնի գործերն էին, որ պետական տեսութեամբ ալ ապօրինի կը նկատուէին, և անոնց դէմ եղած արգելքները՝ կամ անոնցմով գեղծանողներու դէմ ձեռք առնուած միջոցներն էին, որ կոնսուլներու դէմ հալածանք անունով կը յիշուէին հռոմէականներու կողմէն, մինչ պարզապէս օրինականութեան բնական հետեւանք էին։ Վենետիկի միաբաններ յատկապէս այդ կէտին մտադրութիւն դարձուցած էին, հետեւելով իրենց առաջնորդին

*Մխիթարի կանոնին ընդգրկած ուղղութեանը* (§ 1938), *և կը ջանային ապացուցանել, թէ պէտք է ազատ թողուլ Հայ հռոմէականները, որ կարենան Հայ եկեղեցիներու մէջ հայադաւան քահանաներու ձեռքէն այդ խորհուրդները ընդունիլ։ Իբր այդ նպատակին ծառայող փաստ, արուեստակեալ ձեւեր ալ կը գործածէին, և քաջքչուկ վկայութիւններով ցուցնել կ'աշխատէին, թէ Հայոց եկեղեցւոյ դաւանութիւնը հռոմէական եկեղեցիէն տարբերութիւն չունի, թէ հռոմէականութեան անյարմար բացատրութիւններ ոմանց անհատական կարծիքներ են և նշանակութենէ զուրկ են, և թէ Հայոց եկեղեցին իւր ամբողջութեամբը և պաշտօնական կերպով Հռոմէ զատուած կամ Հռոմէ դատապարտուած չէ։ Այդ դրութեան գլխաւոր դիտումն էր Լատին քարոզիչներուն միջամտութիւնը հեռացնելով, ընիկ Հայ կաթոլիկութիւն մը ստեղծել։ Այդ նպատակով պաշտօնական գիրեր ալ պատրաստուեցան, որոնց վրայ պիտի խօսինք։*

**ԹՐԻԷՍՏԻ ԲԱԺԻՆԸ**

**2111**. *Դառնալով այն երկու միաբաններուն որոնք զինուորական ոյժով Ս. Ղազարէ արտաքսուեցան* (§ 2108), *ասոնք ուղղակի Թրիէստ* (Trieste) *ապաւինեցան, որ է հին Տերգեստիա քաղաքը, որ երկար ատեն Վենետիկի հանրապետութեան ներքեւ գտնուելէ ետքը*, 1382'*ին անցած էր Աւստրիոյ կայսերութեան։ Այն ատենուան գահակալն էր Մարիա-Թերեզիա կայսրուհին, որ* 1742'*էն իւր հօրը Կարոլոս Զ'ի ժառանգ ճանչցուած էր, և գործերու բուն վարիչն էր, թէպէտեւ միեւնոյն ժամանակ իբրեւ կայսր կը նկատուէին Կարոլոս Է* 1742'*էն* 1745, *անկէ ետքը Թերեզիայի ամուսինը Փրանկիսկոս Ա մինչեւ* 1765, *և անկէ ետքն ալ Թերեզիայի որդին Յովսէփ Բ։ Պապիկեանի յարող միաբաններ Թրիէստի մէջ հաւաքուեցան առաջին անգամ* 1773 *մայիս* 19'*ին, և Թրիէստի մէջ առանձինն մարմին կազմելու որոշումը տուին, և այդ նպատակով կայսրուհիին ալ դիմեցին, որ ամենայն եռանդով փարեցաւ իւր սահմաններուն մէջ Արեւելեան համայնք մը և Հայկական միաբանութիւն մը կազմելու առաջարկին։ Իսկ* 1775 *մայիս* 30'*ին կայսերական արտօնագիր մըն ալ տուաւ զանազան առանձնաշնորհումներով, և գլխաւորապէս Աստուծոյն Հոգւոյն, կամ աւելի ճիշդ Աստուծոյն պաշտպանելու նկատուելու հանգամանքով, և վանաշինութեան գետին ալ պարգեւելով։ Այսպէս Թրիէստեան Հայ կրօնաւորներու միաբանութիւն մը կը ստեղծուի, Վենետիկեան Հայ կրօնաւորներուն միաբանութենէն անջատ։ Իբրեւ պաշտօնական կոչում Վենետիկի մէջ Անտոնեան կամ Բենեդիկտեան, կամ Անտոնեան-Բենեդիկտեան անունները խառն գործածուած էին։ Թրիէստի ճիւղը կը պարծենայ առաջին եղած ըլլալ Մխիթարեան Միաբանութեան անունը պաշտօնապէս գործածելու մէջ, թէպէտեւ յատկապէս Մխիթարայ Աբբայէ կոչումը կանոնին ալ Վենետիկի մէջ կը գործածուէր։ Որչափ ալ Թրիէստեան ճիւղը իբր առանձինն կը կառավարուէր, բայց տակաւին վերջնապէս Վենետիկէ անջատուելու գաղափարը զօրացած չէր. այլ աւելի Մելքոնեանի անձին դէմ եղած գրգռութիւնը կը տիրէր, և անոր մահուընէ ետքը նորէն միաւորուելու ակնկալութիւնը կորսուած չէր։ Ուստի մէկ կողմէն Թրիէստեան ճիւղն ալ ուսման և տպագրութեան, դաստիարակութեան և քարոզութեան գործողութիւններուն հետամուտ էր, Մխիթարի ձեռնարկին հետեւողութեամբ. իսկ միւս կողմէն առժամեայ վարչական կերպ մը կը պահէր՝ եռամեայ պայմանաժամով ընտրուած վանահայրներով. մինչ Վենետիկի մէջ կը տիրէր ցկեանս աբբահայրութեան դրութիւնը։ Թրիէստեաններու նիւթական միջոցները, թէ հռոմէական ազգայիններու և թէ Աւստրիական պետութեան կողմէն՝ տկաւ նուազեցան,* 1773'*ին լուծուած Յիսուսեանց միաբանութեան ինչքերէն դիւրացնոյ ստացութեանց փափաքը՝ պարտքերու ալ դուռ բացաւ, և պահ մը իրենց մէջ ալ վհատութիւն տիրելով՝ հեռացողներ և Վենետիկ դարձողներ ալ գտնուեցան, բայց Թրիէստեան ճիւղը չլուծուեցաւ, և կրցաւ իւր շարունակութիւնը պահել։ Այդ մասին մեծ աշխատութիւն և արդիւնաւորութիւն ունեցաւ Աստուածատուր Պապիկեան վարդապետ, որ գիտցաւ պետական և արքունական յարաբերութիւններն ալ մշակել։*

**ԱՆՏՈՆԵԱՆՔ ԵՒ ԶԸՄՄԱՌ**

**2112.** Երբոր Մխիթարեան միաբանութիւնք չփոթ միջոց մը կ'անցընէր Վենետիկի մէջ, Անտոնեան միաբանութիւնն ալ ազատ չէր նմանօրինակ չփոթներէ, բայց ոչ բուն միաբանութեան մէջ, այլ աւելի ընիկ Անտոնեան միաբան՝ Միքայէլ Գասպարեան կաթողիկոսին երեսէն (§ 2065)։ Սա իւր Զըմմառի հայրապետանոցը և անոր մէջ բացուած դպրանոցը ծաղկեցնելու փափաքով, Անտոնեանց զարգացման արգելքներ հանելու ալ չէր վարաներ, և միաբանութեան տէր դառնալու անտեղի պահանջումներու ալ կը ձեռնարկէր։ Գասպարեանն ալ Լիբանանի մէջ նմանօրինակ դեր մը կը վարէր, ինչ որ Մելքոնեան ունեցած էր Վենետիկի մէջ (§ 2108)։ Անտոնեանք Հռոմի մէջ վանք մը կազմակերպելէ ետքը (§ 2065), աշակերտներու պզտիկ խումբ մը ուղեցին փոխադրել հոն՝ ուսումնական զարգացման համար, բայց Գասպարեանի դժուարութիւն հանելուն վրայ, պարտաւորուեցան գաղտագողի և փախստեան ճամբով Լիբանանէ հանել աշակերտները հայր Կարապետ Հալաճեան միաբանի առաջնորդութեամբ։ Մեկնողներ դժուարին ուղեւորութեամբ, և Մարսիլիա ու Լիվոռնօ երկարատեւ դադարներով, հազիւ եօթն ամիսէ Հռոմ կը հասնին։ Նոյն միջոցին Անտոնեանք Մարոնիներու միաբանական կանոնին փոփոխութիւններով իրենց համար վաւերացուելուն հետամուտ էին պապութեան առջեւ։ Փրոփականտայի ժողովը ինչ ինչ բացատրութեանց համար Գասպարեանին կը գրէ, որ այդ առիթէն կ'օգտուի, իւր գաղափարը առաջ քշելու, որ էր Անտոնեանց յատուկ միաբանութիւնը խափանելով միակ Զմմառեան աշակերտութիւն մը հաստատել, զոր միաբանութիւն կ'անուանէր, և ըստ այսմ իւր միտքին համեմատ բացատրութիւններ և տեղեկութիւններ կը հաղորդէր Հռոմ։ Բայց անոնք ընթացք չէին ունենար, և Անտոնեան միաբանութիւնը իւր դիրքը կը պահէր, թէպէտ առկախ ու առժամեայ ձեւով մը, համաձայն Հռոմի որոշման, որ Անտոնեանք ազատ ըլլան ցարդ գործածած կանոններուն համեմատ գործել մինչեւ որ Փրոփականտայի ատեանը ժողովը վերջնականապէս որոշէ այդ խնդիրը (ԱՆՏ.)։ Գասպարեան շարունակ իւր նպատակին ծառայելով, 1776'ին գումարուած Անտոնեանց միաբանական ժողովին կ'ուզէր մասնակցիլ իբր ընիկ միաբան մը, բայց միաբաններուն կողմէ ընդդիմութեան հանդիպելուն, ժողովը անվաւեր հռչակելու, և իբրեւ թէ միաբանութիւնը օրինական դրութիւնը կորուսած ըլլար, իր կողմէն այցելու գլուխ մըն ալ նշանակելու կը ձեռնարկէր։ Բայց Յովհաննէս Պէտրիկեան արքեպիսկոպոս խոհական կերպերը, և տեղացի իշխաններուն միջամտութիւնը այնքը կասեցուցին։ Գասպարեան, որչափ դիւրաբորբոք իւր ձեռնարկներուն մէջ, նոյնչափ ալ դիւրափոփոխ էր պարագայից հանդէպ, ուստի իւր կեանքին վերջին օրերը 1779'ին, հաշտութիւն և խաղաղութիւն կը հաստատէր միաբաններուն հետ, սակայն երկկողմանի հիմնական որոշման մը յանգելու ատեն չէր մնար, զի քիչ ետքը կը վախճանէր 1780 նոյեմբեր 5'ին, և կը թաղուէր Զըմմառի կաթողիկոսարանը։ Իրեն յաջորդեց Բարսեղ Ավգարեան, Բերիացի, սա ալ Անտոնեան միաբան, Յակոբ կաթողիկոսէ Ամասիոյ անունով եպիսկոպոս ձեռնադրուած։ Ընտրութիւնը կատարուեցաւ 1780 դեկտեմբեր 1'ին, երեք եպիսկոպոսներու ժողովով՝ ընտրեալն ալ մէկտեղ համրելով, և երկու եպիսկոպոսներ ալ բացակայ գտնուելով (ԱՂ.Ք. Ա. 31), իսկ պապական հաստատութիւնը ստացաւ 1781 յունիս 21'ին։

**Կ-ՊՈԼՍՈՅ ԱԹՈՌ**

**2113.** Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան վրայ խօսելով նորէն պիտի յիշենք, թէ ալեկոծեալ և դժուարին կացութեան մէջ կը գտնուէր Գրիգոր Պասմաճեան վարդապետ պատրիարքը (§ 2089)։ Առեղծուածային կերպարան մը ունի այդ կացութիւնը, որուն մէջ Պասմաճեան ծանր հակառակութիւններու և աւելի ծանր ամբաստանութիւններու ներքեւ գտնուելով ալ՝ իւր պաշտօնին վրայ կը մնայ, թէպէտեւ յակամայից պաշտօնի կոչուած կը ցուցնէ ինքզինքը։ Ինքն չթողուր ու չթոթափեր պաշտօնը, և ոչ ալ իւր հակառակորդները վերջնական կերպով զայն հեռացնելու չեն ձեռնարկեր, և ինը

տարիներ կը չարունակէ այդ աններանելի կացութիւնը, մինչ չատ դիւրին էին թէ Պասմաճեանի իւրովի հեռանալը և թէ Պասմաճեանի բանի հեռացուիլը։ Հակառակորդներու գլուխը կը գտնուէր Գասպար Մուրատեան ամիրան (§ 2087), թէպէտ չենք գիտեր թէ ինչ անձնական հակառակութեան պատճառ կը գտնուէր մէջերնին, քանի որ Անագինի խնդիրը այնչափ զօրաւոր գրգիռ մը պէտք չէր ըլլար այլեւս, Անագինին և Շամախեցիին մեռնելէն և գործին փակուելէն ետքը։ Պասմաճեան աւելի գործունեայ հակառակորդ մը աւելցաւ, Մանուէլ Բալուեցի քահանան, այն որ Նալեանի օրով ալ չփոթներու գլուխ էր կանգնած և պետական հրամանով աքսորուած (§ 2060)։ Մանուէլ ըՆէ ..կ.. ժամանակէ Կիպրոսի աքսորավայրէն փախչելու հնարքը գտած էր, մօրուքը գերծելով և տարազը ծպտելով (ՊԱՍ. 113), և Կ-Պոլիս դալուն Սիմէոն ամիրայի միջնորդութեամբ աքսորի հրամանն ալ ջնջել տալ յաջողած էր, և պաշտօն մը առանց քահանայագործելու միայն ետքը՝ այդ արտօնութիւնն ալ ձեռք ձգեր էր պատրիարքէն՝ Գասպար Մուրատեանին պահանջմամբ (ՊԱՍ. 114), և մինչեւ իսկ պատրիարքարանէն չարաթական ռոճիկ ստանալու սկըսած էր (ՋԱՄ. Գ. 875), հարկաւ հանդարտ մընալու պայմանով։ Սակայն Մանուէլ այդչափով վաստկուելու մարդը չէր։ Նա յարմար և ինքնընծայ գործիք դարձաւ Գասպարին ձեռքը, և Պասմաճեանը հալածելու ամենայարմար գործիչ մը։ Իւր կողմը չահեցաւ և գործակից կազմեց Աբրահամ Ակնեցին, որ էր յ...ջ...յ ի տ..ծ և ի ծ....յ..բ..ն պատրիարքին, իբր դրան գործակատար (ՊԱՍ. 114), և Սարգիս Տիպաճեան քահանան, Սամաթիոյ Ս. Գէորգի ծխատէրներէն (ՊԱՍ. 21), այն որ հնուց ալ Մանուէլի ընկերակից էր եղած (§ 2060)։ Նորէն կազմուեցաւ Մանուէլեանց անհանդարտ խմբակը, հովանաւոր ունենալով Գասպար Մուրատեանը, այն որ դէ.ն ..դէ.. կը կոչուի Պասմաճեանէ (ՊԱՍ. 114)։ Մանուէլ սկսաւ ամէն կերպերով վաստաբանել և զըրպարտել, և պատրիարքը վարկաբեկ ընելով տապալելու աշխատիլ։ Մանուէլի վերադարձին, և Մանուէլեանց կազմակերպութեան թուականն ցուցուցած է 1766 տարին (ՋԱՄ. Գ. 875), որ է ըսել Պասմաճեանի պատրիարքութենէ ելնելէն եօթը տարի առաջ։

**ՊԱՍՄԱՃԵԱՆԻ ԴԷՄ**

**2114.** Անհաւատալի ըլլալու չափ անճոռնի են Պասմաճեանի դէմ յարուցուած ամբաստանութիւնները, և բոլորովին իսկ յիչատակելու համարձակութիւն չէինք ունենար, եթէ նոյն իսկ իւր գրչով նչանակուած չտեսնէինք։ 1. Թէ աղայութեան ատեն ի կը.. Հ-ֆ-ր-ց--ոց ..ե-լ է, և իսլամութենէ քրիստոնէութեան դառնալով Երուսաղէմ և ուրիչ տեղեր թափառած, և անցեալը մոռցնել տալով եկեղեցականութեան մտած և մինչեւ պատրիարքութիւն բարձրացած, կամ իբր պատրիարք ..կ..ե-լ ..ն ե..ե-լ է։ 2. Թէ Բ..ֆ..ե-լ է, և թէ պայս վկայած էր ..ն ի յ..ն երկ--ց, այսինքն կամ Մանուէլը կամ Աբրահամը, որ յայտնած կ'ըլլայ թէ իւր կինն ըսած է իրեն, թէ ես ..ն..ն ..կ..ե.. եմ ի բ-ղ--մ ..ֆ-մ և ի բ-ղ--մ ժ-մ..կ.. (ՊԱՍ. 53), առանց ճչդելու թէ երբ և ինչպէս։ 3. Թէ 800 քսակ գումար տալով Սարգիս Սարաֆեան և Սամուէլ Երզնկացի եպիսկոպոսները Արեւմուտք է ղրկած, որ դպրատուն բանան և տղաքներ ալ ղրկած է ..ն ..ն..ե..յ ..ր..ն..ն..։ 4. Թէ երկու ..կ..բ..յ ..կ.. Նալեանէ միացած, և ..կ.. ..ն..կ.. լեցուն, որոնք յ..ր..ն.. պիտի տրուէին, հարկաւ իբրեւ տուրքերու վճարում, ինքն բ..ց..ց..լ է, և ..լ ..ց..լ ի յ..ր..ն..։ 5. Թէ ..ր ..ր ..ն և ..ղ..ր..ն ..ն..ց..ե-լ ի ..ֆ.. Հ..մ..յ, և քաջալերած երթալ ի յ..կ..ց.. Լ..ր..ց..ց։ 6. Թէ հրամայած է աղօթել ..ն յ..ղ..բ..ց ..ն..ն..ց և ..ն պ..ց..բ..ն ..ց..յ Լատինացւոց։ 7. Թէ Հայերուն մէջէն ..բ..ր..ց..լ փախուցած է Արեւմուտք, և ներած որ հոն պահեն ..ե.. և ..ր..ն..բ..ն.. տեղւոյն (ՊԱՍ. 54)։ 8. Թէ կը թողու ..կ..ց..ն ..ն..լ ..կ..բ.. (ՊԱՍ.55)։ Պասմաճեան ինքն այդ կէտերը համրելով կը բաւականանայ, և ամէնն ալ տռհասարակ բ..ն.. ..ր..ր..կ..ն.. ..ն..բ..բ.. և ..ն..ր.. կը յայտարարէ (ՊԱՍ.53), որով միեւնոյն ումգնութեամբ հեռացուցած կ'ըլլայ իրմէ, թէ

յառաջագոյն Թուրք և թէ այժմ ֆրանկացեալ ըլլալու կէտերը (ՊԱՍ. 55)։ Այդ ամէնը կառավարութեան դուռն ալ կը խօսէին հակառակորդները, մինչև իսկ տային գիտէր ամ-թափանութեան տերոյն (ՊԱՍ. 54), և կ'աշխատէին մինչև ցմահացուցանել։ Ասկէ զատ գիտեալ թուրքականս, և շատ մըն ալ առձեռն պատրաստ պատցնելով կ'ըսէին, թէ երբ պատրիարքը փոճկացուցանեմք, այսօր գէտտէ դարձեմք գէտացուցանել և թէ այսօր դարձեալ դարձէ կոխել և վրայ կը բերէին, թէ յետ կախելոյն նորին՝ ի տառապէ իւրոյ նոքելոց և ըմպելոց եմք քաջալ ազատութեան (ՊԱՍ. 55)։ Որչափ ալ չափազանցուած երգիծանքներ ըլլան այդ խօսքերը, սակայն կը ցուցնեն հակառակորդներու լրբութեան աստիճանը, և անբացատրելի կը դարձնեն թէ ինչպէս տակաւին պատրիարքութեան աթոռին վրայ կը մնար, կամ թէ կը թողուին մնալ։

2115. Իբրև հաւանական մեկնութիւն այս միայն կրնանք ըսել, որ հակառակորդ խմբակին համակրած չէր

**ՀՐԱԺԱՐԵԼՈՒ ՓՈՐՁ**

հանրութիւնը՝ գոնէ ժողովուրդին մեծամասնութիւնը, և անոնց համակրութեան և համաձայնութեան վրայ յենլով Պասմաճեան՝ իւր պաշտօնը յառաջ կը վարէր, նեղուելով մէկտեղ լրբենի զրպարտութեանց երեսէն։ Այդ կարծիքներնուս իբրև փաստ կը նկատենք որ երբ Պասմաճեան ընտրութենէն ութը տարի ետքը կը փորձէ գործէ քաշուիլ, ժողովրդական բուռն հոսանք մը կը գտնէ իրեն նպաստաւոր։ Ժողովուրդը ժողովի կը հրաւիրէ ի դարբնարկական յեկեղեցւոջ 1772 փետրուար 22'ին, ի յաւուր շաբաթու Բարեկենդանի, Ղևոնդեանց և Վարդանանց տօներուն միջանկեալ օրը, և կը հաւաքուին վեց հազարաւոր, այսինքն Կ-Պոլսոյ վեց թաղերու ժողովուրդը, քահանայք ու իշխանք, և ի Բալաթ եկեղեցւոյ ծերանէք և ի խօսից տէրք, առեալ զան զնացեր, որև կը յայտնէ զկամս և զխորհուրդս իւր, այսինքն է զհրաժարումն ի գործոյն։ Ժողովն ու ժողովուրդը երբոր լսան զայս բանս, ոչ լսան յայնէ աղաղակաց պատրիարքին, և պնդեցին ու խօսեցին որ մնայ ի վերայ իւրեանց, և ի վերայ Բալաթ ազգին տէր և դատաւոր, խոստանալով վերծինդէր ըլլալ այնոցիկ՝ որ ատեն զհերհայութեան և զհակառակութեան իրեն

դէմ, և մինչև ցայն արտաքսել բողոքել անոնց դէմ։ Այդ խոստումը գիրի կ'առնեն, և ներկաներէն առեալ զան զերկու հարիւր անձինս կնիք կը զարնեն, և թուղթը Պասմաճեանին կը յանձնեն։ Ասոր վրայ Պասմաճեան կը քաջալերուի, և նոյնով բանիւ և գրաւոր հաճեցեալ կը զիջանի, և յայտնուած կամքին կը հնազանդի՝ մնալ ի վերայ գործոյն և ի վերայ ազգին (ՊԱՍ. 95)։ Դժբախտաբար իրեն տրուած վստահութիւնը գործնական չըլլար, վասնզի չէին կարող ժամանակէ մասոյն զամենայն զբանս և զխորհուրդս իւրեանց, և նորէն Պասմաճեան իւր հակառակորդներուն ձեռքէն նեղութեանց մատնուեցաւ (ՊԱՍ. 96), որոնք մինչև կայսեր բողոք տուին, թէպէտ չլսուեցան, և եկեղեցիներու մէջ թուղթ բողոքանացեց ձգեցին։ Պատրիարքը ոգևորութիւն առած, Մանուէլի համախոհներէն մէկը բանտարկել տուաւ, նոյնիսկ Մանուէլն ալ Աբրահամ ընկերին հետ Ամասիա աքսորել կու տայ (ՋԱՄ. Գ. 876), և դարձնելու համար միջնորդութիւններն ալ կը մերժէ (ՍՐԳ.)։ Բայց հակառակորդութիւնը չվերջանար, վասնզի միշտ գործի վրայ էր Գասպար, զոր խորհրդատու կ'անուանէ Պասմաճեան, և կը յաւելու թէ կախեալ կայր ամիրայից ի նմանէ եր (ՊԱՍ. 23)։

2116. Գասպար նոր առիթ մըն ալ կը ստեղծէ՝ պատրիարքը ձանձրացնելու, Երուսաղէմի հաշիւները մէջտեղ հանելով, որով զայն

**ՊԱՐՏՔԻ ԽՆԴԻՐ**

ամբողջ հազար ղուրուշ դարձեալ եհան, որ էր Երուսաղէմի հաշուէն՝ իւր պատրիարքական ընտրութեան առթիւ ծախսուած գումարը, որ ընդհանուր և պաշտօնական ծախք մըն էր, և ոչ թէ իւր անձնական պարտքը։ Այսու հանդերձ Գասպարի բռնադատութեան վրայ, Պասմաճեան կը զիջանի, և Երուսաղէմի պատրիարք Կարապետի անուան պարտագիր կը ստորագրէ, թէպէտ Կարապետ մեռած էր արդէն, անոր համար զթողութիւնն նորա մահուանէն յառաջ և յետոյ ժամանակաւ կը դնէին։ Այս կերպով պարտապան ըլլալէ ետքը, պարտքը վճարելու համար կը պարտաւորուէր վաճառել զամենայն զգոյսս եկեղեցական, զկերպն և զոսկեղէնս և զարծաթեղէնս, զորս պատրաստած էր ի յեկեղեցւոյ Սրբոյն Յա-

կոթայ աթոռին, և ի վերայ խորտակելոց եկե-ղեցեաց ալ էր։ Մուրհակը ստորագրելուն մէջ՝ պէտք է խոստովանիլ Պասմաճեանի տկարամտութիւնը, սակայն նա ինքզինքը կ'արդարացնէ, և ակնարկելով Գասպարին, գոլով է, կ'ըսէ, որ գոլ և խորհրդոյ կերպուելով դոփամանս, ո՞վ է որ ոչ տրտմեսցի։ Ուստի կը յաւելու, ըստ ամենայնի հեղգացաք վասն անձին նորա, որ ոչ երբեք կարացաք տալ բանս ինչ ընդդէմ կամաց նորին (ՊԱՍ. 24)։ Սակայն եղելութեանց կապը կը ցուցնէ, թէ պատրիարքութիւնը պահելու միտումն է, որ զինքը զիջողութեան յորդորած է։ Եղելութեան պարագաները բացատրելու համար կ'աւելցնէ, թէ ինքն առնմին յայտնած էր, որ ծախքերու կարողութիւն չունի, բայց Գասպար և միւս ամիրաներ բացած էին, Աստուած ողորմած է, միայն թէ դու ողջ իցես յանձինդ այս։ Ուստի կը սպասէր որ այն պարտքը իր վրայ պիտի չծանրաբեռնեն, սակայն հակառակը ձեռնարկեցին ընել 1773'ին (ՊԱՍ. 23), ընտրութենէն ինը տարի ետքը։ Միւս կողմէն ալ կը յիշէ, թէ այս տեսակ ծախքեր միշտ աթոռին հաշւոյն եղած են, և ոչ ընտրեալներուն անձնականին։ Յանուանէ կը յիշէ Յովհաննէս Կոլոտ պատրիարքը, որուն ցանկալի պէտք և գաղտնապահութեան հոգայր Շղթայակիրը, աղաչելով լռել և ոչ ձայնելով։ Յակոբ Նալեան պատրիարքին ծախքերն ալ 20,000 ղուրուշ, Երուսաղէմէ դրկած են՝ Սեղբոս ամիրային և Դալաթիոյ աւագերէց Զափիռուն մականուանեալ Սահակ քահանային ձեռամբ։ Մինաս Ակնեցիի Կ-Պոլսոյ պատրիարքութեան և Յակոբ Նալեանի Երուսաղէմի պատրիարքութեան ծախքն ալ 40,000 ղուրուշ, ի յորդեացն Երուսաղէմի պարտեալ եղև։ Յակոբ Նալեան երկրորդ անգամ պատրիարք եղած ատեն 4000 ֆէշքէշի տուած է հրաժարելու համար Գէորգ Դափանցիին ի տեղէն Երուսաղէմի։ Բերած օրինակները կը հաստատէ յաւելլով, թէ ականատես և վկայ եմ, և թէ դրամը կորզել պարտ յետամբ դրովք. և կը կնքէ գոչելով. Մէթէ՞ նոքա որդիք ազատի էին, և մեք միայն որդիք օտարաց և ծառայք էաք (ՊԱՍ. 25)։ Սակայն այդ գանգատները անազան կը գրէ, մինչ գործին ատեն ձայն իսկ հանած չէ, կամ սաստիկ տկարամտութեան՝ և կամ աթոռը ձեռքէ հանելու վախէն ստիպուած։

**ՊԱՍՄԱՃԵԱՆԻ ՀՐԱԺԱՐԻԼԸ**

2117. Ժողովական ցոյցը և Պասմաճեանի հրաժարականին մերժումը, փոխանակ Պասմաճեանը աւելի զօրացնելու, ընդհակառակն զայն տկարացուցած էր, զի ցոյցը արդիւնք հետեւանք չէր ունեցած։ Պասմաճեան այս տեսնելով, վերջնական կերպով քաշուելու մտադրութիւնը ունեցաւ, առաջին ցոյցէն տարի մը ետքը, որովհետև կը տեսնէր զգլուխն Պօղոսեանցն, և զօրեղոյ գոլ Թագաւորին դեսպանն, մինչև Թագաւորէ յանձն առնուլ ընդ թագաւորին տեղւոյն, և հրամայեցին զայլ ոք պատրիարք ընտրել (ԴԻՒ. Ը. 269)։ Բայց յառաջ քան զմեկնելն ի պաշտօնէն, բանակցութեան մտաւ մեծամեծներուն հետ, առաջարկելով միով բանիւ զհրաժարելն ի մօտակայ տեղւոջ ուրեք առնել զբնակութիւն. և մեծամեծներ առ այս խորհրդոյս հաճեցան և դաւանեցին եղեն (ՊԱՍ. 111)։ Այդ պայմանագրութենէ ետքը, խորհրդակցութիւններ սկսան պատրիարքութեան ընտրելիներու վրայ, և այսպէս եղեւ որպէս մի (ՋԱՄ. Գ. 876), մինչև որ վերջապէս հաւանեցան և համաձայնեցան Էջմիածինի նուիրակ Զաքարիա եպիսկոպոսի վրայ, և Գրիգորի հրաժարականին և Զաքարիայի ընտրութեան պաշտօնագիրները միանգամայն ներկայացուեցան կառավարութեան, և Պասմաճեան 1773'ին ի վերջն Նոյեմբեր ամսոյ գործէ քաշուեցաւ (ՊԱՍ. 34), կամ աւելի ճշդութեամբ, նոյեմբեր 28'ին պատրիարքութիւնը թողուց և բնակեցաւ Իւսկիւտար (ՋԱՄ. Գ. 877), ուր էր Երուսաղէմի հին հոգետունը։ Նոր պատրիարքին անձին և գործին վրայ չխօսած, Պասմաճեանի մասին յիշենք, թէ Իւսկիւտար առանձնացեալ ապրեցաւ իբրև աղօթաւոր։ Սակայն այդ վիճակը հաստատուն չեղաւ, զի խորհրդական ապարատի Էջմիածնայ խումբը, ինչպէս ինքն հեգնաբար կը գրէ, ոչ թողին ի վերայ խառնանց և խօսից խորհրդոց, այլ ակամայ կատարել զանողորմ խաղանս (ՊԱՍ. 34)։ Ինքն չբացատրեր թէ բրածնին ինչ էր, իսկ ուրիշ տեղէ կ'իմանանք թէ ձայներ սկսան հանել, թէ հանդերձեալ է յափշտակել զպատրիարքութիւնն։ Գուցէ իր կողմնակիցներուն, և գլխաւորապէս կաթոլիկամիտներու մէջ

խլրտումներ ալ սկսան Զաքարիայի դէմ։ Ուստի մեծամեծներ ուզելով [illegible], յորդորեցին Պատմաճեանը Կ-Պոլսէ հեռանալ (ՁԱՄ. Գ. 877), թէպէտ ինքն իրեն կը վերագրէ, [illegible] մտածած ըլլալու նախաձեռնութիւնը (ԴԱՍ. 34)։ Կ'երեւի թէ հեռանալու խրատը տուողներ՝ գործադրութեան կերպը իրեն են թողած. ինքն ալ մտածած է Կիպրոսի առաջնորդութիւնը ստանձնել, ինչ որ իրեն կը տրուի, և մայրաքաղաքէ մեկնելով Կիպրոս կը հասնի 1774 հոկտեմբեր 26'ին (ՁԱՄ. Գ. 877)։ Հոն տեղ ալ մնացած է դարձեալ [illegible] (ՊԱՍ. 34), բայց որչափ ալ յօժարակամ ընտրած էր, սակայն Կիպրոս բաւական չէր Պատմաճեանի ձգտումները գոհացնելու, որ աւելի ընդարձակագոյն ասպարէզի և լաւագոյն բախտի ձգտումներով կ'օրօրուէր։ Միւս կողմանէ պատրիարքութեամբ ալ չաջողելէ ետքը, ազգային շրջանակի մէջ նոր յաջողութեան յոյս չէր կրնար տածել, ուստի տարբեր շրջանակի մէջ նետուելու որոշումը կու տայ։ Արդէն այն ատեններ բոլոր ազգային շրջանակի մէջ ձախողողներուն համար վերջին ապաւէնը այս եղած էր, ուստի ինքն ալ [illegible], կ'ըսէ, և [illegible] (ՊԱՍ. 34), թէպէտև ոչ մի նոր դաւանական նիւթ կամ նոր հակառակութեան նշան չէ ունեցած Կիպրոսի առաջնորդութեան միջոցին, զոր ինքն էր ուզած և ընդունած։ Ազգային շրջանակէն բոլորովին յուսահատած պէտք է ըլլայ, որ և ոչ իսկ համարձակած է Էջմիածին դիմել, և գոնէ այնչափ փափաքած և հետամուտ եղած եպիսկոպոսութիւնը ստանալ։ Կիպրոսէ մեկնիլը նշանակուած է 1775 սեպտեմբերին (ՁԱՄ. Գ. 877), նաւագնացութիւնը եղած է [illegible], և ուղիղ եկած է ի Վնէժ կամ Վենետիկ, մերձաւորաբար դեկտեմբերին մէջ։ Այստեղ կը մնայ [illegible], ուսկից կը փոխադրուի Հռոմ 1776 ամառուան, և հոն կը մնայ [illegible], և վերջապէս 1777 ապրիլին կը փոխադրուի Անքոնա (Ancona), փափաքելով [illegible] (ՊԱՍ. 35), չենք գիտեր թէ օգտին յարմարութեան համար, թէ ոչ Արեւելքի հետ ազատ յարաբերութիւն պահելու դիտմամբ։

2118. Կոստանդնուպոլսոյ պատրիարքութեան համար Պատմաճեանի յաջորդ

ԶԱՔԱՐԻԱ ԿԱՂԶՈՒԱՆՑԻ

ընտրուած Զաքարիա եպիսկոպոսը, հռչակաւոր Կաղզուանցին էր, բնիկ Կարսայ վիճակի կամ հին Գաբեղեան գաւառի Կաղզուան աւանէն, որդի մեծատուն Բարիլոյս Փօքուղեանի և Նազէի, որ էր [illegible]։ Ծնած է շուրջ 1720'ին, եկեղեցականութեան փափաքով Մայրաթոռի ժառանգաւորաց դպրոցին աշակերտած, 1755'ին վարդապետ ձեռնադրուած լուսարարապետ Եղիազար եպիսկոպոսէ, և եպիսկոպոսութեան բարձրացած Ցամախեցիին ձեռնադրութեամբ։ Զաքարիայի արտաքին նկարագիրը կը տրուի, [illegible] (ԹԻԻ. Ժ. 215). և այս վերջին պարագան առիթ տուած է զայն մականուամբ [illegible] կոչելու (01 ՕՐԱ. 151)։ Իսկ ներքին նկարագրով կը ցուցուի իբրև կամքի և գործի տէր անձ, ազգին պատուոյն և եկեղեցւոյ պայծառութեան նախանձախնդիր, ուսման նուիրեալ և դաստիարակութեան հետապնդող, և իր նպատակին աշխատելու մէջ դժուարութենէ չընկճող և ուժգին միջոցներէ չխուսափող։ Մայր աթոռէն հեռանալուն առաջին պաշտօնը եղաւ Եւդոկիոյ շրջանակին նուիրակութիւնը Ցամախեցիին հրամանով, զոր կը վարէր երբ Սիմէոն աթոռ բարձրացաւ, և նուիրակութեան տարիները լրացնելով Էջմիածին դարձաւ 1764 մարտ 4'ին (ԹԻԻ. Գ. 67)։ Հոն մնաց մինչեւ 1767, մինչեւ որ Ցարութիւն Բասենցի եպիսկոպոսը՝ Կ-Պոլսոյ նուիրակը, մայրաքաղաքին նուիրակութիւնը աւարտելով նոյն շրջանակի [illegible] էր եղած։ Այդ միջոցին նուիրակէն զատ մայրաքաղաքի մէջ կը մնար ուրիշ վարդապետ մըն ալ [illegible], այսինքն [illegible] անուանով, իբր կառավարիչ Մայր աթոռի ինչքերուն և կալուածներուն, և այս պաշտօնին կոչուած էր ծերունի Բար-

սեղ վարդապետը (§ 2087)։ Երբոր Բասենցին մայրաքաղաքէն հեռացաւ, Սիմէոն ստանձեց նոր կարգադրութիւն մը ընել, որ կերպով մը փոխարինէր Կ-Պոլսոյ մէջ կաթողիկոսական փոխանորդ հաստատելու ձախողած խորհուրդը (§ 2086), և որուն տեղը չէր կրցած բռնել միւթէվէլլիի պաշտօնը։ Այդ նպատակով Կ-Պոլսոյ շրջանին նուիրակութիւնը երկուքի բաժնեց, և մայրաքաղաքը յարակից վիճակներէն զատեց, միւթէվէլլիի պաշտօնը ջնջեց, Բարսեղ վարդապետը արտօնեց որ ուր ուզէ բնակի, և գործակալեց ընծայաբերութեան իւր, և Կ-Պոլսոյ լոկ քաղաքին համար նուիրակ նշանակեց Զաքարիա Կաղզուանցին, որ ընդ նուիրակութեանն՝ որպէս և գեղեցիկն անդ հօտայիս, հօտոցն (Դիւ. Գ. 749)։ Այդ նոր պաշտօնին մասին պէտք եղած պաշտօնագիրները 1767 սեպտեմբերին գրուած կը տեսնուին (Դիւ. Գ. 761), որով հազիւ 1768'ին սկիզբները Զաքարիա Կ-Պոլսոյ մէջ պաշտօնին ձեռնարկած կ'ըլլայ։ Զաքարիայի յանձնուած պաշտօնը՝ լոկ նուիրակութենէ աւելի ընդարձակ էր, և անուղղակի կերպով կանուխէն մտածուած կաթողիկոսական փոխանորդութիւնն էր։ Զաքարիա իւր պաշտօնին պայմանաժամը լրացնելով, եթէ կամիք դառնալ ի սուրբ աթոռն փութայիք, մինչև եւ կարգեալ է նոյն գործ (Դիւ. Ժ. 215), կամ որ նոյն է, երկրորդաբար եկն ի շնորհաբերութեան նուիրակութեան ի կաթողիկոսէն (ՍՐԳ.), այսինքն Զաքարիայի պաշտօնը կրկնուեցաւ, ինքն Կ-Պոլսէ չհեռացած։ Ըստ այսմ չարդարանար ոմանց կարծիքը թէ Զաքարիա Էջմիածին վերադարձած էր, և երկրորդ անգամ ալ 1772'ին իբր նուիրակ եկած էր Պոլիս (01 ՕՐԱ. 152)։ Նոյն իսկ Սիմէոնի թղթակցութեանց հաւաքածոյն ալ, Կ-Պոլսոյ հետ յարաբերութիւնները անընդհատ կերպով Զաքարիայի հետ կը պահէ, և Կ-Պոլսոյ համար ուրիշ նուիրակի անուն չի յիշեր։

ԶԱՔԱՐԻԱ ՊԱՏՐԻԱՐՔ

2119. Հազիւ թէ Զաքարիա սկսած էր նորէն նուիրակական նուէրներուն հանգանակութեան, Սամաթիոյ Ս. Գէորգ թաղէն սկսելով, Կ-Պոլսոյ մէջ Պասմաճեանի դէմ հակառակութիւններ զօրացան, նոր պատրիարքի ընտրութեան բանակցութիւններ սկսան. ուստի ինքն ալ կաթողիկոսին կը գրէր, թէ յոյս կայ օրս բանն ի մի կողմն և եղիցի, և յայնժամ գրեցից եմ զնորինն (Դիւ. Ը. 269)։ Հարկաւ անտեղեակ չէր իրեն անունին շուրջը դարձած խօսքերուն, բայց բան մը չէ ուզած գրել, նոյն իսկ ընտրութիւնը ըլլալէն ետքն ալ, թէպէտ Սիմէոնի ընծայաբերեան մեծ եղեւ պատրիարքանալ Զաքարիա վարդապետին, բայց ինքն Զաքարիա վարդապետն զայնմանէ բան ինչ ոչ գրեր, և 1774 յունուարին դեռ իրմէ այդ մասին գիր հասած չէր Էջմիածին (Դիւ. Ը. 269), թէպէտ 1773 նոյեմբերի վերջին օրէն Զաքարիա պաշտօնին գլուխն անցած էր։ Ըստ այսմ ճիշդ չըլլար ըսել, թէ պաշտօնին համար դիմում եղաւ կաթողիկոսին, և միայն յետոյ եկն հրամանն հաճոյական վեհափառին, որ Զաքարիա հաճեալ ընկալաւ և եղեւ պատրիարք (Դիւ. Ժ. 216)։ Զաքարիա Կաղզուանցի պատրիարքութեան մտնելուն օրը 1773 Նոյեմբեր 28 շաբաթ օր չկրնար ըլլալ (01 ՕՐԱ. 151), զի 28'ը հինգշաբթի է. ուստի աւելի ճիշդ է Նոյեմբեր 29 յաւուր շաբաթու գրուածը (ՍՐԳ.)։ Միայն թէ Կաղզուանցիին եղբօրորդին ու կենսագիրը, ի յետ Նոյեմբերի ի տօնի Առաջին Լուսաւորչին կը դնէ (Դիւ. Ժ. 216), որ է ըսել նոյեմբեր 30, շաբաթ օր։ Իրարու մօտ, բայց տարբեր թուականները կրնանք համաձայնեցնել, 28'ին դնելով վերջնական համաձայնութիւնը և Պասմաճեանի մեկնիլը, 29'ին Մեծն Ժողովոյ յեկեղեցին որբոյ Աստուածածնին հռչակուիլը (ՍՐԳ.), և 30'ին Բարձրագոյն Դուռ ներկայանալով հաստատուիլը։ Իսկ Սիմէոն միայն 1774 փետրուար 5'ին ստացած է Կ-Պոլսոյ մեծամեծաց յունուար 4'ին գրած գիրը (Դիւ. Գ. 754), և ինքն ալ ապրիլ 5'ին կոնդակ մը կը գրէ Զաքարիայի պատրիարքութեան մասին (Դիւ. Դ. 758)։ Սակայն այդ պարզ օրհնութեան կոնդակ մը կը սեպուի, քանի որ կոնդակին հանելուն արդէն վեց ամիսէ աւելի եղած կ'ըլլայ Զաքարիայի պաշտօնավարելը։ Հետաքրքրական են պատրիարքական պաշտօնավարութեան համար կոնդակին մէջ նշանակուած վեց կանոնները։ 1. Հայաստանեայց եկեղեցւոյ աւանդութեանց համեմատ հովուէ։ 2. Ցոփարարմամբ քայլեց և ի մէջ հեռաց-

եալ ողոքանաց կրօնէ՝ ժողովուրդը զգուշացընէ ։ 3. Խորհրդակցութեամբ հասարակէ և խորհրդական ժողովոց գործէ ։ 4. Զգուշանայ արժանաւորաց տայ, իսկ զԹանաքրեան և զխաւարեալն խոտէ, և դատէ եթէ խրատով չուղղուին ։ 5. Առաջնորդ կարգէ այնպիսիներ՝ որք փորձեալք իցեն ի հաւատս և ի կրօնս ։ 6. Մայր աթոռին ստորադրեցեալ և հրամանատար և հնազանդ մնայ (ԴԻԻ. Գ. 753) ։

**ՀՌՈՄԷԱԿԱՆ ԿՂԵՐ**

2120. Զաքարիայի պատրիարքութեան առաջին տարիներէն նշանաւոր եղելութիւններ չեն պատմեր յիշատակագիրներ, և նոյն իսկ իւր գովաբան եղբօրորդին՝ Կաղզուանցի Պօղոս քահանան, իւր պատմագրութեան մէջ մեզի այդ մասին նիւթեր չմատակարարեր, և բոլոր գրածները աւելի եռքը կաթոլիկամիտներու դէմ մղուած պայքարին վրայ կը կեդրոնացնէ ։ Սակայն մենք կը դիտենք, որ այդ միջոցին սկսան Զաքարիայի անունին ամէնէն աւելի պատիւ բերող ձեռնարկները, նպատակ ունենալով ազգին մէջ զարթուցանել ուսումնական զարգացումը, և Հայ դաստիարակութիւն մը կազմել, անկախաբար հռոմէադաւանութեան ազդեցութենէն ։ Հռոմէական շարժումը ուսումնական զարգացման քօղին ներքեւ հետզհետէ իւր գետինը կ'ընդարձակէր, և այդ հրապուրիչ առաւելութեան շնորհիւ ազգին մէջ համակրութեան առարկայ կը դառնար ։ Ստոյգ է որ հռոմէական երկիրներու չփումը, Արեւելքին մէջ պատրաստուող եկեղեցականներէն աւելի բանգէտ խումբ մը կ'արտադրէր, որուն կարողութիւնը՝ եթէ չափազանց բարձրացնել ալ չուզենք, սակայն համեմատաբար շատ առաւելութիւններ ունէր, մանաւանդ օտար լեզուներու հմտութեամբ, օտար գիրքերու ծանօթութեամբ, և դասական նիւթերու ձեւաբանութեամբ ։ Այս խումբը կազմող եկեղեցականներէն լաւ թիւ մը Հռոմի մէջ հիմնուած Ծաւալոցի կամ Վառն-Տարածման-Հաւատոյ (De Propaganda Fide) դպրոցէն կ'ելլէր, և դըպրոցի իտալերէն անունէն (Collegio), Գոլէճցիք կամ Գոլէճեանք, և Փրօփականտայի կամ Ծաւալոցի աշակերտներ կը կոչուէին ։ Խումբ մըն ալ Վենետիկ կ'արտադրէր իւր միաբաններով, որոնք հայագիտութեան մէջ աւելի զօրաւոր էին, մինչ Գոլէճեանք շատ տկար էին այդ մասին, և միայն օտարագիտութեամբ կը ճոխանային ։ Լիբանան հաստատուող Անտոնեան միաբանութիւնն ալ, և անուանեալ կաթողիկոսարանն ալ աշակերտներ կը հասցնէին, և Թրիէստի ճիւղն ալ իւր առաջին կազմակերպութեան արդիւնքները կ'ընծայէր ։ Ասոնց գործակից էին Արեւելք հաստատուած բուն Լատին քարոզիչներ, որոնց մէջ քիչ ու շատ տեղական լեզուներու հմուտներ կը գտնուէին ։ Հայն իրնէ զարգացման անյագ տենչացող, ուսման և գիտութեան հրապոյրին առջեւ դիւրաւ կը տկարանար, և ինչով որ օտարադաւանութեան աշակերտող Հայ եկեղեցականներ չահուած էին, նոյնով իրենց համազգիներն ալ շահելու դիւրութիւնը կը գտնէին ։

**ԶԱՔԱՐԻԱՑԻ ՋԱՆՔԵՐ**

2121. Հաւասար զէնքերով պայքարելու համար, պէտք էր որ նոյնչափ և աւելի ալ ուսումնական դիւրութիւններ ստեղծել և արդիւնքներ արտադրել, բայց այդ մասին երկու դժուարութիւններ կային, որոնց դէմ պէտք էր մեծ ճիգեր թափէին ուղղափառ հայադաւաններ ։ Մէկ մը որ Արեւելք ինքնիրմէ միջոցներ չէր ընձեռեր, միւսը որ Արեւմուտք առանց կրօնական զոհողութեան իւր ունեցածը չէր հաղորդեր ։ Մեծ բարոյական կորովի, տոկուն ուղղամիտ կամքի, և զօրաւոր ու սրտոտ հոգիի պէտք կար՝ այդ պարագաներուն ներքեւ գործելու ։ Ճշմարիտ ազգասիրութեամբ տոգորեալ անձեր պէտք էին, որպիսի եղած էր արդէն Վարդան Բաղիշեցին, ներքին գաւառներու խորերուն մէջ ։ Անոր գործին արդիւնաւոր զարկ տուեր էին Կոլոտն ու Նալեանը մայրաքաղաքին մէջ, բայց պահ մը թուլցեր էին այդ աշխատանքները՝ Նալեանի հիւանդութեան և տըկարութեան պատճառով, որուն վրայ եկեր էր Պասմաճեանի յուզուած միջոցը ։ Զաքարիա եղաւ, որ գործին նոր շարժում մը ազդեց ։ Նա հոգեւին իւր եկեղեցւոյն յարած, և անոր նախանձայոյզ պաշտպանն եղած, զգաց թէ Հայ եկեղեցւոյ հակառակորդներուն դէմ մրցելու զօրաւորագոյն

միջոցը դաստիարակութեան և զարգացման ջանքն է, ուստի անձամբ նուիրուեցաւ այդ աշխատութեան, և հազիւ Կ-Պոլիս մտաւ 1768ին, իր պաշտօնը մայրաքաղաքին մէջ ամփոփուած ըլլալով, կատարեալ դաստիարակի և ուսուցչի դերը ստանձնեց, և Նալեանի օրէն չնէ անցէլըց ամաց ու բուամաց՝ նորոգեց Մայրեկեղեցւոյ կից եղող հին դպրոցը, և ինքն ալ անոր մէջ ուսուցչի դերն ստանձնեց, և Նալեանի անձն ու գործը վերակենդանացուց։ Ժամանակակիցք այդ երկուքին նայած են իբր յերկուս հոգեւէց վարժաղեթա մայր-դպրոցան, ինչպէս կոչուած և ընդունուած են Ցակոբ արհիպասնտ եպիսկոպոսն և Զատիկա արհիպասյան սրբեպիսկոպոսն (ՏԱՇ. 118)։ Զաքարիա աւելի ձեռնհասութեամբ և աւելի հեղինակութեամբ ընդարձակեց և զարգացուց իր ձեռնարկը՝ երբ պատրիարքական իշխանութեան բարձրացաւ, այնպէս որ իր տապանագիրին մէջ ալ արձանագրուած է՝ թէ չնայր վարատ ճախեղ աղէկ, և թէ եղեւ ոսկէղ մարդ դասատերակ։ Զաքարիայի այդ աշխատութեանց արդիւնք են իր նշանաւոր աշակերտները՝ զորս հասցուց, չէօթնեան եպիսկոպոս և վերեւին վարդապետ, որք են Ցակոբոս, Բարթողիմէոս, Ցովհաննէս, Ցակոբ, Անդրէաս, Պօղոս ու Պետրոս եպիսկոպոսները, և Թովմաս, Թադէոս, Կարապետ ու Աստուածատուր վարդապետներ։ Բաց ասոի ճախտայոյց չար դպրոցանս, յորս հաստատեց վարժապետս, և նմանապէս թաղային վարժարաններու հիմնադիրն եղաւ, զի անկէ առաջ ուսուցչութիւնն ալ իբրեւ խնամակալութիւն կը կատարուէր։ Պատուելիներ կամ վարժապետներ շուկայի կամ խանի մը մէջ սենեակ վարձելով յաճախորդներու կարդալ ու գրել, լեզու ու հմտութիւն կը սորվեցնէին։ Զաքարիայի հիմնած թաղական վարժարաններուն անդրանիկը կը նկատուի Գումքափու թաղի Ծրչրճր փողոցին մէջ բացուածը՝ Շնորհք ամիրայի աստուածեանութեամբ, անկէ ետքը կը յիշուին Գալաթ, Բերա, Սամաթիա, Օրթաքէօյ, Գուրուչեշմէ և Իւսկիւտար թաղերու մէջ հետզհետէ բացուածները, որոց մէջ պաշտօնավարողներ Ժողովրդ անունով կը սիրէին կոչել։ Այդ դասակարգին առաջիններէն յիշենք՝ Սարգիս Ցովհաննէսեան, Մատթէոս Գալաթցի, Թադէոս Ասլանեան, Խաչատուր Պատուելի, Մարտիրոս Սարկաւագ վարժապետները (ՕԼ ՕՐԱ. 159), գոնէ անուններին ապագային յարգանաց պահելու համար։ Վանդի Զաքարիայով սկսած շարժումն է, որ այլեւս չկասեցաւ, և օրօրէ յառաջանալով մեր ներկայ յառաջդիմութեան սկզբնաւորութիւնն եղաւ։ Զաքարիա Կողզուանցին իրաւամբ պիտի հռչակուի, իբր մեծ դարուն ազգային զարգացման մէջ առաջին վաստակաւորն ու երախտաւորը։ Այս տեսութեամբ էր որ Զաքարիայի պատրիարքութեան առաջին տարիները իրեն անունին ամենէն աւելի պատիւ բերող միջոցն ըսինք (§ 2120)։

**ԷՋՄԻԱԾՆԻ ՏՊԱՐԱՆ**

**2122.** Մայրաթոռէ դուրս կատարուած ազգային անցքերը որչափ հնար է ամփոփ կերպով քաղելէ ետքը, պէտք է նորէն Մայրաթոռ դառնանք, ուր Սիմէոն կաթողիկոս կը շարունակէր իր տենդոտ գործունէութիւնը, ամէն բանի համար կարգուսարք հաստատելու, և նորանոր բարեկարգութիւններ աւելցնելու համար։ Այս նիւթերուն պարտուպատշաճ բացատրութիւնը կը ստիպէ մեզ ամենայն խստութեամբ ժամանակագրութեան չհետեւիլ, այլ նիւթերը իրենց նախընթաց և հետեւորդ պարագաներով դիւրըմբռնելի դարձնել։ Այս պատճառով տակաւին չխօսեցանք Մայրաթոռի մէջ բացուած տպարանի մասին։ Էջմիածնի գահակալներ քանի քանի անգամներ թէ նախաձեռնարկ և թէ օժանդակող եղան տպարանական հաստատութեանց, իբրեւ ազգային բարեկարգական և բարեգործական ձեռնարկ մը, ինչպէս ընդհանրապէս նկատուած էին տպարանները անցեալին մէջ. մինչ այժմ գրեթէ հասարակ խանութի կարգ անցած են։ Էջմիածնի դիրքը չէր ընծայեր այն դիւրութիւնները որոնք տպարանի մը համար անհրաժեշտ էին, ուստի կաթողիկոսներ ստիպուած էին տպարանները Արեւմուտքի քաղաքներու՝ Ամսդերդամի, Մարսիլիայի, Վենետիկի, Լիվոռնոյի, և նոյնիսկ Արեւելքի քաղաքներէն՝ Կ-Պոլսի և Ասպահանի մէջ բանալ տալ, և ոչ Վաղարշապատ։ Եթէ բացուած տպարանները Ս. Էջմիածնի դպրոցն ալ անուանեցին, սակայն Էջմիածնի

*Մայրաթոռին մէջ տպարան գոյութիւն չունեցաւ մինչեւ Սիմէոնի ժամանակը։ Այդ փափաքը Սիմէոնի միտքը կաթողիկոսանալէն ետքը չծագեցաւ, և ոչ ալ իբր հայրապետական մեծագործութեան նշանակ եղաւ. որովհետեւ նա այդ միտքը յղացած էր, երբ կաթողիկոսանալէն 20 տարի առաջ, տակաւին սարկաւագ Հնդկաստանի նուիրակութիւնը կը կատարէր* (§ 2070)*։ Այդ միտքը յաջողեր էր ներշնչել՝ Մատրաս բնակող Ջուղայեցի մեծահարուստ վաճառականներէն Գրիգոր Միքայէլեան Խօջաջան Չաքիկեանցի՝ աւելի ծանօթ Չաքիկենց մականուամբ* (ԴԻԽ. Գ. ձկ), *որ յանձն առեր էր պէտք եղած ծախքերը հոգալ, իբր իւր անձին և իւր ընտանեաց յիշատակ. բայց չենք գիտեր թէ ինչու Սիմէոնի վարդապետութեան և եպիսկոպոսութեան ատեն նպատակը իրագործելու ձեռնարկներ չեղան։ Հաւանաբար Չաքիկեան իւր վստահութիւնը անձնապէս Սիմէոնի վրայ դրած էր, իսկ Սիմէոն դրեթէ շարունակաբար Մայրաթոռէ դուրս կը գտնուէր։ Նթէ առաջին պարագաներ Սիմէոնը արգելեցին իւր հնօրեայ փափաքը կատարել, սակայն միտքը չի փոխուեցաւ, և կաթողիկոսական աթոռ բարձրանալէն ետքը առաջին գործերէն մին եղաւ, տպարանի պէտք եղող տառեր ու գործիքներ ճարել, սակայն պատեհ առիթներ պէտք էին փնտռածը գտնելու։*

**2123.** *Սիմէոն լուր առաւ թէ Առաքել Պօղոսեան Ջուղայեցի մը Ամստերտամի մէջ Յովհաննէս-Միքայէլ Ֆըլայշման*(Fleischmann)*փորագրիչին ձեռքով* (ՏԳԱ. 178), *հայերէն տառեր պատրաստել տուած է, բայց շարադրութեան հարկաւորել ոչ կարեմ վասն ծերութեան տկարութեան։ Ուստի 1765 մարտ 4'ին կը գրէր Զմիւռնիոյ նուիրակ և առաջնորդ Ղուկաս Կեղեցի կամ Կարնեցի վարդապետին, որ անոնք գնով առնուլ ջանասցէ է որքէ Աւետա* (ԴԻԽ. Գ. 149)*։ Քիչ ետքը լսուեցաւ որ Մարկոս տպագրիչ մը Զմիւռնիոյ մէջ տպարան է բացած, ուստի Ամստերտամէ լուր չհասնելուն վրայ, Սիմէոն 1765 դեկտեմբեր 6'ին գրեց նոյն Ղուկաս վարդապետի՝ որ կամ Մարկոսի տառերը գնէ, և կամ տպագրիչն ալ միասին Էջմիածին փոխադրէ* (ԴԻԽ. Գ. 431)*։ Սարգիս Սարաֆեան եպիսկոպոս ալ Վենետիկի մէջ պատրաստել տուած տառերը Կ-Պոլիս փոխադրած էր, Սիմէոն անոր ալ գրեց 1766'ին, և Խնդրեմք տալ շարադրեալ գիրս որքոյ Աւետարան, կամ Ճաշոց, կամ է Տէրունական հոգւոյն երգոց* (ԴԻԽ. Գ. 551)*։ Միեւնոյն ատեն չէր խզած թէ Առաքելի և թէ Մարկոսի հետ սկսուած բանակցութիւնները* (ԴԻԽ. Գ. 552)*։ Սակայն առանցմէ և ոչ մէկը յաջողեցաւ։ Առաքելի գիրերուն վաճառման Ամստերտամցի Հայեր արգելք դրին, կասկածելով թէ մի գուցէ Սիմէոն եկեղեցին և կալուածներն ալ վաճառելով բոլորովին իրենց գաղութը խափանէ* (ՏԳԱ. 185)*։ Մարկոս տպագրիչ չուզեց իւր սկսած և յառաջացուցած գործը խանգարել։ Իսկ Սարգիս Սիմէոնի հետ բանակցութիւնները չվերջացած՝ տառերը վաճառեց Գէորգ Կեսարացի դպիրին, որ Կ-Պոլսոյ Վէզիրխանի մէջ տպարան բացաւ, և քիչ օր ետքը 1766 մայիս 11'ի երկրաշարժին օրը՝ խանի փլատակին ներքեւ մեռաւ* (ԳԱԼ. 250)*։ Բայց Սիմէոն իւր նպատակէն ետ չկեցաւ. չենք կարող ըսել թէ տեղէ մը կրցած ըլլայ պատրաստ տառեր ճարել, զի Նորատպեալ գիրերու խօսք կ'ընէ* (ԴԻԽ. Գ. ձկը.)*, ուսկից կը հետեւի թէ նորէն փորագրել և ձուլել տալ յաջողած է։ Տօնացոյցի յիշատակարանին մէջ ալ կը յիշուին Յարութիւն Էջմիածնեցի վարդապետ և տպագրող, և Մկրտիչ Ծառաթեցի եպիսկոպոս, որ նախկին հեղինակ եղեւ սա բարերարութեան ի դողջնութեալ* (ՍԻՄ. 562)*։ Ըստ այսմ տպարանը կը բացուի 1771'ին, ինչպէս կը վկայէ Չաքիկեանց Գրիգորի և ընտանիքին յիշատակին ձօնուած արձանագիրը, թէ անոր աշխարհի՝ հաստատեցաւ տպագրատուն ամենայն պարագայիւք* (ԴԻԽ. Գ. ձկ.)*։ Բայց 1771 թուականը տպարանական արտադրութեանց ալ բուն թուականը չերեւիր։ Գիրքի մը պէտք եղած առարկաներուն Էջմիածին բերուիլը ամենադժուարին գործերէն մէկն էր, նկատի առնելով երթեւեկի արգելքները, քաղաքական չիոթները և տեղւոյն հեռաւորութիւնը, և 1772'ին կրնայ նշանակուիլ Զբօսարան հոգեւոր գրքուկին հրատարակութիւնը, և 1773'ին Տաղարան անուանին տպագրութիւնը, որոնք Էջմիածինի առ-*

Սիմէոնի ջանքեր

պարանին նախընծայ արդիւնքներ կը նը-կատուին։ Իսկ ինքն Սիմէոն կը յիշէ «Նախա-դէս գտանի հաւ Սաղմոս, և երկրորդագոյն չհա-րէն փէրմն աշխէց», որոց երկրորդագոյն կը յա-ջորդէ Տօնացոյցը (ՍԻՄ· 554)։ Գործին ար-գելքներէն մին ալ թուղթ ճարելն էր, և Սիմէոն 1771'էն Զաքիկեան բարերարին հետ կը թղթակցէր, տպարանին մօտ թըղ-թագործարան մըն ալ հաստատելու համար։ Արհեստին հմուտ գործաւորներ գտնելու ջանքն ալ բաւական առեն խլեց։ Պարս-կաստանէ եկողներ գոհացուցիչ չեղան, Զաքիկեան Փարիզէ եկած Ողնաչէն ջոր-դեփ՝ Բէյլոն և Տէսիօռ Գաղղիացիներու հետ պայմանաւորուեցաւ, որոնք Կ-Պոլիսէ Էջ-միածին եկան, բայց կարծես թէ միտք ու-նէին որ թղթը տփանն ու թախիլն, մինչեւ որ Սիմէոն պատրաստուեցաւ թուղթոյն և ստանդապանն սպառնալեօք զանոնք գործի առիպել (Դիւ· Գ· ճկը·), և թղթագործութիւնը արդիւնաւորեցաւ 1776'ին՝ հսկողութեամբ Իսահակ Գեղամացի եպիսկոպոսին, որ է նախնիքն Յովհաննէս Գեղամացի դպիրը (§ 2075)· և երախայրիքը նուէր յղուեցաւ բարերարին (Դիւ· Գ· ճկե·)։ Շինուած թուղ-թին վրայ ջրանկար փակագիրներ կային, Ս· Կ, և Գ· Մ· որոնք Սիմէոն կաթողիկոսի և Գրիգոր Միքայէլեան Զաքիկեանի անուն-ները կ'արտայայտէին (Դիւ· Գ· ճկը·)։ -

**2124**· Էջմիածինի տպարանէն ելած, Զբօսարան և Տաղարան մանր արտադրութիւն-ները, շատ ընտիր գործ մը եղած պիտի չըլլան, որ դիտմամբ մէջտեղէն վերցուած, և 1777'ին նո-րէն տպուած են (ՏՊԱ· 119)։ Իսկ իբր ա-ռաջնապտուղ կարեւոր գործ նկատուած է Տօնացոյցը, որ 1774'ին սկսած է տպագրուիլ (ՍԻՄ· 1), և աւարտած 1775 ապրիլ 7'ին (ՍԻՄ· 561)։ Վերջաբանին մէջ ըսուած է թէ, «Ահա Անիւ տե և յորս աշխատիմք և տքնիմք, զի պտղաբերութ այս է յետոյ ծերցատ», և Տօնացոյցին տպագրութիւնը նախընթացներէն հաստատ և կատարեալ կը կոչուի (ՍԻՄ· 554)։ Սակայն Սիմէոնի տօնացոյցը տպագրութենէն աւելի, իր կազմութեամբը յատուկ մտադրութեան առարկայ մըն է։ Յայտնի է թէ Հայ եկե-ղեցւոյ տօնակատարութեանց կարգը եօթ-նեկական դրութեան վրայ հիմնուած է, որով ամէն տարի միեւնոյն ամսաթիւին նոյն տօնը չհանդիպիր, ինչպէս ուրիշ եկեղեցի-ներու սովորութիւնն է։ Զատիկի տօնին և անոր յարակից Մեծպահոց և Յինանց մի-ջոցներուն շարժականութիւնն ալ յատուկ պահանջներ կը ստեղծէ։ Այդ ընդհանուր շարժականութիւնը անհրաժեշտ կ'ընէր, որ իւրաքանչիւր տարւոյ համար տօներու մաս-նաւոր դասաւորութիւն մը կազմուէր. սա-կայն այս ընելու համար հաստատուն ձեւը կը պակսէր, և վիճակներ կրնային իրարմէ տարբեր դասաւորութիւններ կազմել, գուցէ քաղաք քաղաքէ ալ կը տարբերէր նոյն վի-ճակին մէջ, մանաւանդ որ դասաւորելու պէտք եղած հմտութիւնն ալ ամէնքը հա-ւասարապէս չունէին։ Սիմէոն ինքն ալ կը դիտէ, թէ «Ոմանք զայս տօն յայս էին օր տօնէին, և ոմանք յայլ օր, ոմանք զայս էին տօն՝ միայն տօնէին և կամ ընդ այլում, և ոմանք զնոյնս ընդ այլում և կամ միայն» (ՍԻՄ· 7)։ Ասիկայ չփո-թութեանց մեծ պատճառ մըն էր, և անոր դարման եղող որեւէ ձեռնարկ հարկաւ լաւ ընդունելութիւն պիտի գտնէր։ Ըստ այսմ երբոր Վենետիկի Մխիթարեաններէն հայր Յակոբոս Զամչեան 1757'ին Լուսնացոյց, իսկ 1758'էն սկսելով Օրացոյց անունով տարեկան տետրիկներ սկսաւ հրատարակել, իւրաքան-չիւր տարւոյ ամսաթիւերը, լուսնի օրերը և տօներու դասաւորութիւնը պարունակող, ազգին մէջ մեծ ընդունելութիւն գտաւ, և նոյն իսկ եկեղեցական տօնակատարութեանց ալ առաջնորդ դարձաւ։ Բայց քանի որ հռոմէադաւաններու հրատարակութիւն մըն էր, անոր մէջ կը պարունակուէին ոչ միայն Լատին եկեղեցւոյ պատկանող տօներ, այլ և Հայ տօնակատարութեանց մէջ մուծուած լատինամիտ փոփոխութիւններ, որոնցմէ յանգգաստ կը գայթակղէին հայադաւան հաւատացեալներ և պաշտօնեաներ ալ, և տեղի կը տրուէր անտեղութեանց՝ և Հայ ծիսակատարութեան հակառակ պատահար-ներու։ Առ այս կ'ակնարկէ Սիմէոն իր տօնացոյցին յառաջաբանին մէջ, Վենետիկի օրացոյցը՝ Տօնացոյց կամ Տօնարան կոչելով (ՍԻՄ· 15)։ Սիմէոն կանուխէն ալ մտադ-րութիւն դարձուցած էր այդ եղելութեան, և անոր դարմանը հոգալու համար, 1761'ին

ՏՕՆԱՑՈՅՑԻ ԽՆԴԻՐ

*Կ-Պոլիս նուիրակ գտնուած ատեն՝ Տօրէկան օրացոյց մը տպագրել տուած էր, որուն մէջ կ'ըսէր, թէ պատրաստ ունի և շնորհ տօնացոյց մի յօրինեցեալ է վերայ երեսուն և վեց գրոց, այսինքն տառերգրոց* (ՄՏՆ. 722), *սակայն ոչ այս մայր տօնացոյցը և ոչ յաջորդ տարիներու համար օրացոյցներ չերևցան։ Բիչ ետքը 1763'ին Սիմէոն կաթողիկոսացաւ, միշտ միտքին մէջ ունենալով տօնացոյցի և տօնակատարութեանց գործը, որուն յաջողութեան անհրաժեշտ էր տպագրական հրատարակութիւնը, իսկ Էջմիածինի մէջ տպարան ունենալու ձեռնարկն ալ հազիւ կաթողիկոսութենէն տասը տարի ետքը կրցաւ ամբողջանալ և կատարելագործուիլ 1774'ին.*

**ՍԻՄԷՈՆԵԱՆ ՏՕՆԱՑՈՅՑ**

**2125.** *Այդ տասը տարիներու մէջ աշխատեցաւ անշուշտ Սիմէոն՝ տօնացոյցի մասին յղացած միտքերը գործադրել, և հետզհետէ իր աշխատութիւնը լրացնել և յղկել, և հասցնել այն վիճակին՝ որուն մէջ մամուլի յանձնուեցաւ 1774'ին։ Այդ աշխատութիւնը երկու մասի կամ երկու հատորներու կը բաժնուի, որոնց երկրորդը տարեկան դասաւորութեանց ամէն պատահականութիւնները կու տայ, այսինքն 36 տարեգիրներու վրայ՝ նոյնչափ տեսակ փոփոխութիւնները կը ցուցնէ, որք ծագում կ'առնեն զատկի տօնին մարտ 22'էն մինչև ապրիլ 25 տարբերելէն։ Իսկ նահանջ տարիներ կը դասաւորուին փետրուարի 28'էն ետքը նախընթաց տարեգիրին անցնելով, որով փետրուար 28'ի կրկնութիւնը փետրուար 29 կը դառնայ, և անոր վրայ կը քալեն տարւոյն մնացած տասը ամիսները։ Սիմէոնի աշխատութեան այս մասը յոյժ գնահատելի և օգտակար գործ մըն է, որով կանուխէն ապահովուած է իւրաքանչիւր տարւոյ դասաւորութիւնը, և բոլոր Հայ եկեղեցիներ ուր ուրեք գտնուին աշխարհի որևէ կողմը, կրնան միևնոյն կերպով իրենց տօնակատարութիւնները ընել։ Իսկ որ Սիմէոնի տօնացոյցը տարբեր կերպարան կը զգենու առաջին մասն է, այսինքն բուն տօնացոյցն է, որուն մէջ ուզած է նորութիւններ մուծանել, թէ ինչ ինչ տօներ տեղափոխելով, և թէ ծիսական կամ տօնական պաշտամունքը այլայլելով։ Տօներու տեղափոխութենէն արդէն քանի մը հատ յիշեցինք, զորս յատուկ կոնդակով հրամայուած էր, Բարթողիմէոսի և Յուդայի տօնը՝ Թադէոսի և Բարթողիմէոսի տօնի վերածելով, և տօնը Ցրինակաց առջի շաբաթ օրուան տանելով, պահանջուած տեղափոխութիւններով մէկտեղ* (§ 2102)։ *Բայց այդչափով չաւարտեցան Սիմէոնի փոփոխութիւնները։ Ազգասիրական նախանձայուզութեամբ՝ ուզեց ազգային տօները նախապատուել շաբաթ օրերու փոխադրելով, որոնք է լոյս տօնի և է զան ետեւոյ էին, և տօնից հանգստութեան կը տօնուէին, զոր Սիմէոն յառաջ եկած կը կարծէ յանգոյցութենէ և կամ է բոլորութենէ և է ցանցառութենէ տիրայնոց* (ՍԻՄ. 9)։ *Ըստ այսմ Ներսէսի և Խադայ տօնը Հոգեգալստեան չորրորդ երկուշաբթիէն երկրորդ շաբաթին բերաւ։ Տրդատայ և Աշխէնի և Խոսրովիդըխտոյ տօնը՝ Հոգեգալստեան հինգերորդ երկուշաբթիէն չորրորդ շաբաթին փոխադրեց, Որդւոց և Թոռանց տօնը՝ Հոգեգալստեան հինգերորդ երեքշաբթիէն Վարդավառի երկրորդ շաբաթին տարաւ, Մեսրոպի և Թարգմանչաց տօնը՝ Վերափոխման չորրորդ երկուշաբթիէն Խաչին չորրորդ շաբաթին փոխադրեց։ Եւ Աբգարի տօնը Ադդէէն զատեց, և Ցրինակաց չորրորդ հինգշաբթիէն հանելով շաբաթին դրաւ։ Այդ փոխադրութիւնները սահպեցին ուրիշներ ալ ընել պարպուած օրերը լեցնելու, և սարուած օրերուն մէջ եղողները տեղաւորելու համար։ Աստուածածնայ Տուփին և Գօտիին յիշատակները, որոնք կամաւոր էին և չէին տօնուեր, հաստատուն կերպով զետեղեց Հոգեգալստեան հինգերորդ և Վերափոխման երրորդ կիրակիներուն։ Յովհաննէս Օձնեցի, Յովհաննէս Որոտնեցի, և Գրիգոր Տաթևացի վարդապետները Մեծպահոց երրորդ շաբաթ օրը տօնել հրամայեց, մինչ Աղեքսանդր Աղեքսանդրացին և Գրիգոր Ակրականդացին տօնացոյցէն հանեց։ Ըսողներ կան՝ թէ Յովհաննէս Օձնեցին կանուխէն ալ տօնուած էր, և թէ Սիմէոն՝ այդ առթիւ Մովսէս Տաթևացին ալ տօնացոյցին անցուց* (ՊԷՐ. 1), *սակայն մենք այդ կէտերը ստուգող փաստ չենք գտած։*

ԾԻՍԱԿԱՆ ՊԱՏՃԱՌՆԵՐ

**2126**. *Ծիսական և տօնական պատճառներու գալով, Սիմէոնի գլխաւոր կարգադրութիւնը՝ կիրակէ դասելոց [illegible]րց ցուցակ մը կազմելն է (ՍԻՄ. 321)։ Կանխեցինք ըսել (§ 2101) և կը կրկնենք, թէ մանրազննին հետազօտութիւնք կը ցուցնեն թէ Հայոց եկեղեցին խորշած է ընական կիրակիներէ դուրս շաբթուան օրերուն մէջ կիրակէ կամ հրամայեալ տօն հաստատել։ Ասոր հետեւանքներն են տէրունի տօները՝ կիրակիի փոխադրելը, և մեծ սրբոց յիշատակները շաբաթ կատարելով կիրակիին տօնախմբելը, ինչպէս որ ցարդ ևս, օրինակ իմն, Ս. Լուսաւորչի կամ Ս. Գէորգի կամ Ս. Յակոբի անուններն նուիրուած եկեղեցիներ՝ կիրակի կը կատարեն իրենց տօնախմբութիւնները։ Աստուածայայտնութեան տօնին իսկ որոշ ամսաթուով կատարուիլը՝ հնաւանդ չերեւիր, և տօնական պատճառները կը ցուցնեն, թէ կիրակիի յարմարութեամբ կազմուած են։ Հին տօնացոյցներ Տեառընդառաջին, Աւետումին և Աստուածածնայ ծննդեան տօներուն կիրակիի փոխադրուելուն յիշատակներ կը պարունակեն։ Համբարձումին ալ հինգշաբթիի հին պատճառը շատ թեթեւ է, նախատօնակ չունի, և անպատանը վերջամուտ է, և Երկրորդ Ծաղկազարդի կիրակին, իսկապէս Համբարձման տօնախմբութիւն է։ Ուսէրու վրայ խօսած ատեննիս, մեր պատմական շրջանակին մէջ այսչափը բաւական կը սեպենք։ Կ'երեւի թէ Սիմէոն՝ հայկական հին սովորոյթը միւս եկեղեցեաց առջեւ ստորնութիւն կարծելով, Հայոց համար ալ շաբթուան մէջ կիրակէանալու օրեր կազմեց, ինչ որ իրմէ առաջ ընաւ տեղ մը հրամայուած չենք տեսներ։ Արդէն տօնացոյցի հրատարակութենէն առաջ՝ Լուսաւորիչներու պատուոյն սարեկան հինգ օրեր կիրակէանալու կենդակ յղած էր ընդհանուր Հայութեան (§ 2101)։ Նոր Տօնացոյցին մէջ աւելցուց հինգ տաղաւարներուն, Ծնունդի, Զատիկի, Վարդավառի, Աստուածածնի և Խաչի երկրորդ օրերը, և Զատիկի նաև երրորդ օրը, և Ծնունդի ութերորդ օրը, Տեառընդառաջի և Համբարձումի և Աւագ հինգշաբթիի, և Աստուածածնայ Աւետումի, Ծնունդի, Ընծայման և Յղութեան օրերը, ևս Հրեշտակապետաց և Ամենայն-Սրբոց տօները, (ՍԻՄ. 321)։ Աւելորդ չըլլայ դիտել, թէ Աւագ հինգշաբթին ու Զատկի երրորդ օրը ու Աստուածածնայ Ընծայումը ուրիշ եկեղեցիներէ ալ իբր կիրակէանալու տօն ընդունուած չէ։ Այսպէս Սիմէոնին կարգադրութեամբ տարին 21 կիրակէանալու օրեր մուծուեցան Հայ տօնակատարութեանց մէջ։ Տօնական պատճառներու մէջ ալ Սիմէոն ինչ ինչ փոփոխութիւններ ներմուծեց, որոց մէջ իբր կարեւորագոյն պիտի յիշենք Մեծպահոց կիրակիներուն մէջ Յարութեան յիշատակութիւնը ջնջելը, և իբր Յարութեան ընկալութեան ձեւ մը տալը, Իւղաբերից աւետարանէն զեղչելով Յարութեան կտորը և միայն Թաղման կտորը թողլով, Զ[illegible]ծոցեալը քարոզը վերցնելով կամ կիսելով, Նորաստեղծեալ երգը միայն առջի երկու տուներու վերածելով՝ որոնց մէջ Յարութիւն չյիշուիր, և Սուրբ Աստուած սրբաբանութենէն ալ Որ յարեար մասը արգիլելով, և Որ խաչեցար բսել հրամայելով։ Յիշենք ևս Սանփանոսի տօնին յատուկ Այսօր տօնէ երգը, չորս Աւագ տօներուն և Լուսաւորիչներու հինգ տօներուն տարածելը։*

ԱՅԴ ՄԱՍԻՆ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆ

**2127**. *Սիմէոնի կարգադրութեանց մասին խիստ դիտողութիւններ եղան ժամանակին, մինչև իսկ յայտարարուեցաւ թէ Գրիգոր Վկայասէր Քանոնդրանս յաւելեալ է վերայ՝ հրամայած ըլլայ, որ մի՛ իշխեսցէ այլ ոք՝ սուրբ ինչ մուծանել իւիք հաստատուած տօնացոյցին վրայ, որով իբր թէ Սիմէոն այդ վճիռին անսաստած ըլլայ (ՊԷՐ. 1)։ Մեր տեսութեամբ և իրաւական տեսակէտէն, ոչ մի՛ արգելք չկար որ Սիմէոն կաթողիկոս ալ ծիսական կանոն մը կարենար սահմանել, ինչպէս ըրած էին Վկայասէրէ առաջ և Վկայասէրէ ետքը եղող ուրիշ կաթողիկոսներ ալ։ Սիմէոն իւր մէջ զգացած է այդ իրաւասութիւնը, և առանց վարանման ուզած է զայն գործածել։ Միայն խնդիր է, թէ պահանջ է՞ր արդեօք այդ իրաւասութիւնը գործածել, կամ թէ եղած կարգադրութիւնները պահանջուած կամ գնահատելի էին տիրապէս։ Մենք այնպէս կը կարծենք*

*թէ Սիմէոնի ներքին նպատակին մէջ կար, կերպով մը Հայ կաթոլիկները Հայ շրջանակէն դուրս թողուլ ծիսական տարբերութիւններով, և անոնց ազդեցութիւնը արգելել՝ անգործածական դարձնելով անոնց օրացոյցը։ Վասն զի կաթոլիկներ, և յատկապէս Մխիթարեան և Անտոնեան վանքեր և Լիբանանի կաթողիկոսարանը, հին տօնացոյցը պահեցին և Սիմէոնեան փոփոխութեանց չհետեւեցան։ Այդ մասին մեր տեսութեամբ՝ օգտակարագոյն էր թերեւս կաթոլիկները նմանութեան մէջ պահել, քան թէ հեռացնել, որպէս զի տարբեր ինքնութեամբ յատուկ գոյութեան իրաւունք չըստանային, ինչ որ անոնց գլխաւոր դիտումն էր։ Սրբոց տօներու տեղափոխութիւնն ալ զգալի նշանակութիւն մը չէր բերեր, և ազգային սուրբերը շաբաթին բերելով իսկական առաւելութիւն մը չէր գոյացներ, քանի որ տօնախմբութիւններ կիրակիին կը կատարուէին, որ անմիջապէս կապուած էր երկուշաբթիին հետ. Հին տօնացոյցը նոյն օր զետեղած էր յիշեալ տօներէն շատերը։ Բոլոր փոփոխութեանց մէջէն տիրապէս գնահատելի կը գտնենք Առաջին Լուսաւորչաց տօնին կերպաւորութիւնը, իբրեւ չօշափելի նշանակ մը Հայ եկեղեցւոյ առաքելականութեան։ Իսկ Աբգարի տրուած պատիւը՝ պատմական տեսակէտէն խնդիրի նիւթ է. Մուտն ի վիրապը Մեծպահքի օրով փառաւորելը՝ յարմարութենէ զուրկ է, և երբեք ազգային վարդապետները Մեծպահքի մէջ զետեղելը՝ առաւելութիւն մը չէ։ Մեծպահոց կիրակիներուն մէջ մուծուած փոփոխութիւնն ալ նշանակալից չենք գտներ, զի եկեղեցին որեւէ առիթով կիրակիներու Յարութեան յիշատակը նուազել չէ ուզած, բաւականանալով զարդերու հանդերձանքը նուազել։ Չէ՞ որ այսօր ալ կը շարունակենք Մեծպահքի առաջին կիրակիին գոչել.* Փառք յարութեան քո Տէր (ՇԱՐ. 134), *և վեցերորդ կիրակէին կ'երգենք,* Նորահրաշ փառօք յարութեան քո Տէր՝ լուսաւորեցան ժողովուրդք (ՇԱՐ. 230)։ *Այդ տեսութիւնները կը յայտնենք մասնաւոր պարագայից նկատմամբ, թէ ոչ ընդհանուր կերպով չենք մեղադրեր Սիմէոնի համարձակ ձեռնարկը։ Մանաւանդ թէ կը փափաքէինք որ նոյն հոգւով զօրացած կաթողիկոս մըն ալ ազգային տեսակէտէն զօրացնէր մեր տօնացոյցը, անոր մէջ ընդունելով Նախալուսաւորչեան շրջանի առաքելաշաւիղ հայրապետները, յատուկ տօներ սահմանելով Որդւոց և Թոռանց և Թարգմանչաց իւրաքանչիւրին, և նոր յիշատակներ հաստատելով այն քաջարի նահատակներուն և նոր վկաներուն համար, զորս պատմութեանս կարգին յիշեցինք, և մեր խղձերն ալ համարձակօրէն յայտարարեցինք։*

**ՏՕՆԱՑՈՅՑԻ ԿԻՐԱՌՈՒԹԻՒՆ**

**2128.** *Երբոր Սիմէոն իւր տօնացոյցին տպագրութիւնը 1775'ին աւարտեց, սկսաւ զայն ամէն կողմ ցրուել 1776 տարւոյ մէջ,* և բոլոր յիշխանութեամբ սրբոյ Աստուածաէջ աթոռոյս, և հօրն մերոյ սրբոյն Գրիգորի Լուսաւորչի աստուածահրաշ Աջոյն, և հրամանաւ հայրապետութեանս (ՍԻՄ. 17), *պատուիրեց բոլոր Հայ ազգին,* որ է հաստատեալ ի սկզբն թուոյս, որ է ՌՄԻԵ (ՍԻՄ. 21), *այսինքն 1777 տարւոյ սկիզբէն,* Նախապէս զՏօնացոյցն զայն անհետ առնել և խափել իսպառ, և երկրորդապէս զնոր տօնացոյցս զայս առաջեան բերել, և ուղիղ վարել այսուհետև (ՍԻՄ. 19)։ *Էջմիածինի շուրջը և Պարսկահպատակ վիճակներու մէջ շատ դժուարութեանց չհանդիպեցաւ նոր տօնացոյցը, բայց ոչ նոյնպէս Տաճկահպատակ վիճակներու, և մանաւանդ մայրաքաղաքին մէջ։ Ասոր գլխաւոր պատճառներէն մէկն էր կաթոլիկամիտ շարժումը, որուն հետեւողներուն ծանր եկաւ Որոտնեցին և Տաթեւացին տօնելի սրբոց կարգը դասուած տեսնել, որ ուղղակի իրենց ընթացքին դատապարտութիւնն էր։ Զաքարիա պատրիարքն ալ համակիր չէր այդ փոփոխութեանց, բայց ոչ թէ կաթոլիկամիտներու տեսակէտէն, քանի որ ամէն կասկածէ վեր էր իւր նախանձայոյզ հայադաւանութիւնը. այլ պարզապէս իւր անձնահաճ արժանապատուութեան տեսակէտէն, քանի որ Զաքարիա կը զգար իւր ուսումնական և անձնական առաւելութիւնները և Կ-Պոլսոյ պատրիարքութեան ազդեցիկ և տիրական դիրքը։ Ուստի իրեն ծանր եկաւ որ Սիմէոն առանց իրեն հետ խորհրդակցելու և իւր կարծիքն ալ առնելու, ինքովի ամէն բան լրացնելով, և կա-*

*թոլիկոսական ճոխութեամբ հրամաններ կ՚արձակէր։ Միանգամայն կրնար Զաքարիա եղած կարգադրութեանց մասին ինչ ինչ դիտողութիւններ ալ ընել, ինչպէս մենք ալ յայտնեցինք։ Զաքարիա պահ մը ընդդիմանալու գաղափարն ալ ունեցած է, սակայն իր սիրտին մէջ յատուկ պատկառանք մը կը զգար Սիմէոնի հանդէպ, զոր իբր ուսուցիչ և իբր անվրիճելի պետ մը ճանչցած էր իւր առաջին տարիներէն,* [illegible]-եալ յայնժամ ի Սիմէոնէ, չելեալ կարող առնել զոր կամէր *(ՊէՐ· 2), և 1777 տարեգլուխէն սկսելով Սիմէոնեան տօնացոյցը Կ-Պոլսոյ մէջ ալ կիրառութեան մտաւ։*

**2129**, *Պասմաճեանի օրերուն ներքին յուզումները ու պատրիարքարանի մեղմ ընթացքը, և Զաքարիայի պատրիարքութեան ըսկիզբները իւր նախանձայուզութեան ասպարէզ չտուին-իլը, մեծապէս քաջալերած էին կաթոլիկամիտները,* որք այնմ ժամանակի կարի համարձակ ընդդէմ պատրիարքական իշխանութեանն գործէին *(ԴԻԻ· Ժ· 217), և մինչև իսկ սուլտանին կը դիմէին գրով,* թէ պատրիարքն առանց իրաւանց պահանջէ ի մէնջ տուրս անհնարինս, և յոլ տան մեր զայն՝ ներհակ կայ ընդ մեզ և նեղէ *(ԴԻԻ· Ժ· 218)։ Իրենց բողոքին մասնութիւն ալ խառնելով կաթոլիկամիտները կը գրէին,* թէ պատրիարքն մեր Անեմ է, և զհովուութեան կոչումն զգանձս կամի, և յոյժ ա Անեմիտան՝ ի զարթուցումն և ի յօգնութիւն, ա ի յարուցանել նոյն թագաւորութեանն ի վերայ տոյժ տերութեանս *(ՍՐԳ·), ուստի կը խնդրէին որ պատրիարքին հրամայէ,* զի մ՚ ի-պաս նեղիցէ զմեզ, և եթէ հնար է անջատել զմեզ ի նորանէ, և կարգել մեզ յատուկ գլուխ ի մերոց կարգաւորաց, վասն զի կամիմք ելանել յիշխանութենէ նորա *(ԴԻԻ· Ժ· 218)։ Այդ ընթացքը ամէնուն մտադրութիւնը արթնցուցած և զայրոյթի պատճառ եղած էր, և անոր առջեւը առնելու փափաքը ընդհանուր էր։ Զաքարիա ինքն ալ անտարբեր չէր կրնար մնալ, բայց իւրովի ալ նախաձեռնութիւն առնել չուզելով, ազգային մեծ ժողով մը հրաւիրեց 1778 փետրուար 21՚ին Մեծպահոց առաջին չորեքշաբթի օրը, և գումարումը տեղի ունեցաւ Մայրեկեղեցին՝ հան-*զերդ գլխաւոր եղեռնագործի և վարդապետի, և այլ մեծամեծ իշխանի, և յամենայնից ենանջից գլխաւորի, Ալիը ձեմայէթ կոչեցելոյ, և այլ թագաւորութեամբ հաւասարակ ժողովրդականի, եկեղեցւոյ և թանգէտ մարդկան գաւառի *(ՍՐԳ·), որ է այն ժամանակին սովորական ազգային ժողովի ձեւը, ուր իբր հազար հոգի մը ներկայ կը գտնուէր (§ 2115)։ Զաքարիա ժողովը բանալով կացութիւնը բացատրեց, զգացուց թէ պէտք է* զառաջնորդութիւն ազգի մերոյ թողուլ ի մէջ, զի եղբարք եմք ամենեքին, *և այս ոճով չարունակեց իւր ատենաբանութիւնը, որ էր բովանդակ* վարդապետական բանք և խօսք թագաւորական և մեծաւորական, արծարծել հոգեւոր մերոյ *(ՍՐԳ·)։ Ժողովը կատարեալ համաձայնութեամբ ընդունեց պատրիարքին տեսութիւնները, անոր յանձնեց ներքին միջոցներ գործածել կաթոլիկութեան յառաջացումը արգելելու, և բոլորովին իսկ ջնջելու համար. և որոշեց արքունական իշխանութեան հաղորդել իրաց վիճակը և անոր ձեռնտուութիւնն ալ հրաւիրել օտարամոլութեան առջեւն առնելու համար։ Այդ նպատակով կառավարութեան մատուցուելիք խնդրագիր կամ բողոքագիր մըն ալ պատրաստուեցաւ, և առաջնորդներուն կընիքներովը ստորագրուեցաւ։ Կաթոլիկամիտներ՝ ազգն ու անոր պատրիարքը ամբաստանած էին իբրեւ Պարսիկները Օսմանցիներու դէմ գրգռող. ազգայինք գոհացան կաթոլիկամիտներու Եւրոպացւոց հետ յարաբերութիւնները առջեւ դնել, առանց չարամիտ թելադրութիւններ աւելցնելու, և միայն գրեցին, թէ* գաղտաբար և ծածուկ եկամուտ առնեն յեկեղեցիս Ֆրանկաց, և զթաղերատարեալ ի փոխն իւրեանց՝ զհարգս և զխնամս Ֆրանկաց համարձակ կատարեն, և զառանս եկեղեցւոյ սրբաբանն՝ այլ իմն հաւաք ծածկաբար ի մէջ իւրեանց արծարծեն *(ԴԻԻ· Ժ·218)։*

**2130**· *Այդ բողոքագիրը իսկոյն չմատուցուեցաւ, և Զաքարիա պատրիարք ձեռնարկեց միայն ներքին միջոցներով կաթոլիկութեան հետեւողներու դէմ պայքարիլ։ Նախ ուզեց իմանալ թէ ովք և որքան են* հետեւեալ ժողովրդեն, *և քահանաներու հրամայեց անոնց ցուցակը* յանուանէ գրել և բերել. *և յետոյ*

ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎ

ՄԵՂՄ ԸՆԹԱՑՔ

յանձնարարեց որ անոնց տուները երթալով խըրտըէօյէն համըշէր բանէ-+, և այսպէս անցան Մեծպահոց օրերը։ Զատիկէն ետքը, որ ապրիլ 8'ին հանդիպած էր, հրամայեց որ քահանաներ անուղղաներուն գլանան խորհրդակատարութիւնները, չմկրտեն, չպսակեն և չթաղեն։ Բայց ամէնէն աւելի զգալի դարձաւ այդ վերջին պարագան, զի «րէ Ֆըտանէյէն է յէտմէտտնէր կըռնէն -յնֆէ՝ անըալ Ֆայէն՝ է տան անպր Ֆալըմ եբեէ եր, ըրա եր, և Ֆընչէա վէց յաաաար»։ Բայց որովհետև նոյն 1778 տարին ժանտախտ սկսած էր երևնալ Կ-Պոլսոյ մէջ, և անթաղ դիակներ վտանգաւոր կրնային ըլլալ, ուստի Զաքարիա կրկին հրամայեց անշուք թաղել այնպիսիները, յառաջէյ եբֆըլըմ ըրբէդ +աճանայ ֆ և եբ։ Մահտարաժամը հետզհետէ այնչափ զայրացաւ, որ փոխադրելու իսկ չէին հասներ մեռելաթաղերը։ Իսկ մեռնողներու չատութիւնը հաշուելու համար բաւական ըլլայ յիշել, թէ միմիայն Գալաթու Ս. Հրեշտակապետ թաղէն, և այն է Պալըբըա կըղֆ և եբ, մէջը չառնելով թաղին ուրիշ մասերը, երեք ամիսներու մէջ, Հայ ըլլալով հօղըր Ֆոեալ բաաեցեալ են, և նոյն թաղին մէջ մէկ օրը մինչեւ +աան և յնն Ֆոեալ թաղուած են։ Ժանտախտը Վերափոխման տօնէն՝ այսինքն օգոստոս 12'էն՝ սկսած է չէջանէլ և նաաադէլ, իսկ Սրբոց Հրեշտակապետաց տօնին, նոյեմբեր 10'ին, ըէկըմեցաա անաաՆ աէտէօ, ինչպէս կը վկայէ ականատեսը (ՍՐԳ.)։ Այդ միջոցներուն Զաքարիա պատրիարք չատ չէր ընտրելեր պայքարը, ինչ որ համարձակութիւն տուաւ կաթոլիկամիտներուն իրենք դիմել կառավարութեան, պատրիարքարանին դէմ ամբաստանութիւնները կրկնելով և պնդելով, որով Զաքարիա ալ գրեթէ ստիպուեցաւ ժողովով ու ժողովուրդով պատրաստուած բողոքագիրը մատուցանել կայսեր յուլիս 13'ին, ուրբաթ օր մը, երբոր Ապտիւլ-Համիտ կայսրը Բոֆաաարըլան Նաաաան՝ է ըաաաՆաըն յոըջՖարանէն, կ'անցնէր Տէօ յէդըն Պէշէ+-Բաշըա դալըոէն։ Խնդրագիրը ներկայացնողներն էին, Սարգիս Հաճընցի վարդապետ, այլ «մամՖ+ ձօրըդադեօօ+ ձէղըրա†լէարէօ+, և փոխանորդ տէր Վարդան Պապայն այլ ֆաաաաար +աճանայէ-+, և +անէ ֆ էշէանօ+ Ալըը ձէմայէն կօլէօյէլըմէ+, էֆըլ անյամՖ+ է աաբոաան Ֆէրյ Բաաաղէ+

(ՍՐԳ) պատկառելի պատգամաւորութիւն մը։

**2131.** Կաթոլիկամիտներուն դիմումները միշտ անհետեւանք մնացած էին, զի թէ Ապտիւլ-Համիտ կայսրն անձամբ՝ և թէ պետութեան աւագանին սկզբամբ հակառակ էին օտար միջամտութեան, և կասկածաւոր աչքով կը նկատէին Եւրոպական ազդեցութեան իրենց հպատակներուն վրայ զօրանալը։

ՀՌՈՄԷԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ

Ուստի Պաադէաըէն Ֆնալընդեցէ+ հրամանը չարունակ կը կրկնուէր օտարամոլներուն։ Պատրիարքարանի դիմումն ալ լուրջ նկատողութեան առնուեցաւ, և դարձեալ միեւնոյն հրամանը տրուեցաւ, որպէսզի օտար միջամտութիւններ խստիւ արգելուին։ Արդէն սուլտան Ապտիւլ-Համիտէ 1774'ին տրուած՝ Զաքարիայի պաշտօնը հաստատող հրովարտակին մէջ ալ նշանակուած էր, որ ընաւ եկեղեցի մը կըրալէկ անաաանեալ ըըրաֆարծայ (ֆաֆօէըլէ-րէ) չտրուի, և պատրիարքին կողմէ կըրալէ-կաաբեամէ նախտրեցեալ ըըրաֆարծայ (+աբալէ+ բեօհՖէբ էլէ ֆօբահէմ ֆաֆօէըլէրէն) վրայ դրուած տուգանքներուն՝ ուրիշի կողմէ արգելք չդրուի (ԴԻԻ. Փ. 225)։ Զաքարիա ամէն միջոցները գործածած ըլլալու համար յուլիս 26'ին, հինգշաբթի օր ժողովեց Բաժանեցեալոց գլխաւորները, և յորդորեց չյամառիլ, որպէս զի ինքն ալ ստիպուած չըլլայ ձեռք քաշել և թողուլ որ ենթարկուին է մըրՖալըն բըանաբէանօ այըաղէեայ, որոնք կառավարութեան կողմանէ իրենց վրայ պիտի հրամայուէին։ Անոնք պատճառելով թէ եըանալն ժանըաա է, և չեն կրնար ժողովուիլ և խորհիլ, պայմանաժամ խնդրեցին. և պատրիարքն Նեբեայ նօյա Ֆնչէա է տօնՆ օրբաահայ Աաաաաածածնէն։ Վերափոխումէն քանի մի օր ետքը ներկայացան օգոստոս 17'ին, և Ֆըըայ աաայէն, բայց ըբաաըբօ ու կնէեցէն, և օգոստոս 20'ին, երկուշաբթի օր, կրկին եկեալ՝ հաղէն ըէօօա էարեանց, բէ ըօդ անՖնայնէ ձնալընդ+ էմ+ եկեղեցայն Հայոց, բայց հեօճէբ ու կօրեմ+ դալ (ՍՐԳ.)։ Անշուշտ Լատիններէ հրահանգուած էին՝ բերանացի խոստումով վտանգն անցընել, բայց խղճով և օրէնքով յանձնառութիւն չկնքել։ Իսկ պատրիարքը արէան ՅԷր է Ֆլըաէօ ՅԷր աաօյեալ՝ արՅակեայ ըէօըըբ ըայն (ՍՐԳ.)։ Բայց հետեւանքը յաջող չեղաւ, զի պետական

որոշումը, զոր կերպով մը արգելել ջանացած էր Զաքարիա, գործադրութեան դնել հրամայուեցաւ, խոստանալով Արեւմուտքի յարաբերութիւնները մշակող և օտարին հետեւող դասակարգին դէմ։ Այդ մասին յատուկ հրովարտակներով խիստ հրահանգներ տրուեցան Ղալաթիոյ Վոյվոտային, որ Ոսկեղջիւրի միւս կողմին, և օտարազգիներու կեդրոն եղող Ղալաթիոյ և Բերայի կառավարիչն էր (Դիւ. ժ. 229), և Եէնիչէրիներու Աղային կամ ընդհանուր զօրագլուխին, որ գործադիր իշխանութեան գլխաւորն էր (Դիւ.ժ.239)։ Այս հրովարտակներուն թուականը իդէպ է դնել 1778 հոկտեմբերին սկիզբները, զի նոյն ամսոյ 24'ին, չորեքշաբթի օր, ձերբակալուեցաւ Բեթրօ Զաքարիա, կամ Պետրոս Զաքարեան, Հայ մի մծ պօղքլեան յայծ հօրօսօփ (ՍՐԳ.) և Եւրոպական դեսպանատանց թարգման (Դիւ.ժ.263)։ Անոնցմէ ետքը 1778 դեկտեմբեր 21 թուականով նոր հրովարտակ մըն ալ յղուեցաւ Ղալաթիոյ դատաւորին, որուն մէջ ընդարձակօրէն կը բացատրուէին կաթոլիկ կոչուածներուն անտեղի և ապօրինի ընթացքները, և կը հրամայուէր անոնց հետամուտ լինել և պատժել, աքսորել և բանտարկել, և ինչքերնին գրաւել, և այդ մասին մտիկ չընել դեսպաններու միջամտութեան, օրինադրելով որ օրէ՛ և խնդէր էյլըզն՝ օր վօօն բօյօյէ ե՝ օլ կօփօրէօյէ, և մ՛ լէօյէն ըծտօօնէլէ խնդրօնէ նօյէն, միայն թէ ամբաստանութիւնները օրէնքով քննուին դատարանին առջեւ, և մինչէօ օլ օօղլօղէօ ծննէօյէ, մ՛ օէ էշխէօյէ ղօյօյն օէօօրէլ և կամ է թէրօխանէն յվէւ (Դիւ. ժ. 238)։

**2132.** Այլեւս յայտնի գործունէութեան ասպարէզը բացուած էր, և Զաքարիա պատրիարքը որոշ և կորովի ընթացքի մէջ կը գտնենք։ Զաքարիայի դէմ քննադատութիւններ շատ են,

**ԶԱՔԱՐԻԱՑԻ ԸՆԹԱՑՔԸ**

մանաւանդ այժմեան հռոմէադաւան գրողներու կողմէն, որոնք անգութ հալածիչի մը տիպարը կը ջանան ցուցնել անոր մէջ։ Սակայն պատմական տեղեկութեանց վրայ հիմնուելով պէտք է ընդունիլ, թէ Զաքարիա ժողովուրդին և պետութեան միջև միջնորդական դեր մը կը վարէր, մէկ կողմէն ժողովրդական յուզման և նախանձայուզութեան ճնշումը կը կրէր, և միւս կողմէն գործը պետութեան ներկայուելէ ետքը, կառավարական խստութեանց կերպին և աստիճանին պատասխանատուութիւնը չէր կրեր։ Իրաւ ինքն իր մէջ նկատուած ատեն՝ իր եկեղեցւոյն և դաւանութեան նախանձայուզութիւն ունէր, մանաւանդ թէ իր եկեղեցւոյն պաշտպանութեան պարտաւորութիւնն ալ կը զգար, բայց ամէն մանրամասնութեանց հեղինակն ինքը չէր։ Անցողակի յիշատակենք, որ Զաքարիայի և ուրիշ պատրիարքներու ընթացքը դատափետող հռոմէադաւաններ, պէտք չէ մոռնան Հռոմի պապերուն հաւատաքննական հալածանքները։ Հայոց կողմէ եղածները ծանօթ քաղաքներ աքսորէ, և ժամանակաւոր բանտարկութենէ, և գաւազանի քանի մը հարուածնէ անդին անցած չեն։ Անոնք պապերուն պէս բոցակէզ խարոյկներ չեն բորբոքած, քամնելի խոշտանգանքներ չեն գործածած, և նորանոր տանջարաններ չեն հնարած։ Եթէ կ'ընդունին թէ եկեղեցական պետերու ներեալ է իրենց հաւատքը պաշտպանել, պէտք է խոստովանին որ Հայերէն մեղմ և չափաւոր պաշտպանողներ ալ չեն եղած։

**2133.** Այդ միջոցին տեղի ունեցած պատահարները միտք չունինք շատ մանրամասնութեամբ յառաջ բերել, թէպէտեւ բաւական նիւթ կրնային մեզ մատակարարել Պօղոս քահանային և Սարգիս դպիրին յիշատակագրութիւնները, այլ պիտի սոփոփուէինք շատ աւելի երկարել մեր պատմութիւնը։ Մեզի մտիկ ժամանակներ շատ մանրամասնութիւններ պահած են, և թերեւս հետաքրքրական ալ են, բայց մենք որոշ գիծէ մը անդին անցնիլ չենք ուզեր։ Պետական հրամանները կը տրամադրէին հետեւալները ֆանէօ և ֆանէօ խրատել, և անսաստները թիապարտութեան ենթարկել կամ գաւառներ աքսորել, և միանգամայն ինչքերնին յարքունիս գրաւել։ Վերջին պայմանը պետական պաշտօնեաները աշալուրջ գործունէութեան կը յորդորէր։ Այսպիսի ատեններ անձնական կիրքեր և մանաւոր

**ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ՄԻՋՈՑՆԵՐ**

վրէժխնդրութիւններ ալ սաստկագին կը գտնեն իրենց ձգտումները յագեցնելու, ուստի ամենայն օրինաւորութեամբ սկսուած գործ մըն ալ կրնայ զեղծումներու առիթ ընծայել, որոց համար օրէն չէ պատասխանատուութեան ենթարկել օրինաւորութեան սահմանին մէջ գործի ձեռնարկողը։ Երբոր տեսաւ Զաքարիա, որ է յետոյ անզգամ ճահէլէց, կէրդ կէրդ խոյտառական արարքներ կը կատարուին կաթոլիկ մեռելներուն վրայ, և թշնամութիւններ կը գործուին հեստեալներուն դէմ, պարտք սեպեց աւագերէցներու ձեռքով խառիւ արգելքներ հրատարակել եկեղեցիներու մէջ, թէ գործը ինչ յանցեալ է. վասնորոյ ես պատժելոց եմ զնոսա և ես պատժեցից, և յետ միայն հպատակել և սիրով ընդ նոսա վարել պէտք է (ՍՐԴ.)։ Զեռք առնուած խստութեանց երեսէն, եթէ ոչ է նոցանց էլխասորաց, գոնէ չատեր է միջնոյց և է օտար անձանց [illegible] ցուցանէին (ՍՐԴ.)։ Սակայն անոնք ալ, որ խոնարհ եղէն յոյժ, հաստատամիտ չեղան, միայն փոխեաց ժամանակ ինչ այսպէս, և ապա դարձան անդրէն յառաջին (Դիի. Ժ. 258)։ Ըմբոստութիւնը կամ դարձը՝ Հայոց եկեղեցիներ չգալու կամ գալու, և անոնց պաշտօնեաներէն խորհրդակատարութիւն չընդունելու կամ ընդունելու մասին ըլլալով, յայտնի է թէ եռ դառնալնին՝ լատին կամ լատինացեալ պաշտօնեաներու միամիտ ժողովուրդին խիղճին վրայ բռնանալուն հետեւանքն էր։ Ներհիչեալներու աղային ուղղուած հրովարտակին մէջ իբր եղուզ կը յիշուին 35 անձեր, ոմանք վարդապետք և ոմանք քահանայք (Դիի. Ժ. 243), սակայն յանուանէ չենք գիտեր թէ որոնք են այս թիւին մէջ մտնողները։ Հաւանաբար պատրիարքարանէ հաղորդուած հռոմէադաւան կարգաւորներու ցուցակի մը կ'ակնարկուի։

**2134.** Սուլտան Ապտիւլ-Համիտ ներքին համոզմամբ և հաստատուն որոշմամբ կը պայքարէր օտարամոլութեան դէմ, և ժամանակին եպարքոսն ալ համամտութեամբ արձակած էր վերոյիշեալ հրովարտակները։ Կաթոլիկամիտներ՝ հոսանքը իրենց նպաստաւոր դարձած կարծեցին, երբ եպարքոսութեան

ԵՊԱՐՔՈՍՆԵՐՈՒ ՓՈՓՈԽՈՒՄ

հասաւ Տէրէնտէլլի Մէհմէտ փաշա, որուն դուզէրլէնտուզի կամ սեղանաւորն էր Ստեփան Նալպանտօղլու, իրենց խմբակէն։ Տէրէնտէլլին Նալպանտօղլուի թախանձանաց վրայ ալ՝ համարձակեցաւ թագաւորէն հրովարտակներու եռ կոչումը խնդրել, այլ միայն Արաբկիրցի Նազարէթ Մուրակեանց աղայի ձեռօք լուր ղրկեց Զաքարիայի, թէ զեար զայն քարշէ նստեալ ամենայն ակամբ զատակնօք և մարգարտօք ընդ իմ, միայն թէ յետկոցէ ի նեղելոյ զնոսա, այսինքն [illegible] (Դիի. Ժ. 261)։ Առաջարկին հանդէպ Զաքարիայի յայտնած բացարձակ մերժումին վրայ, Տէրէնտէլլին կայսեր կը դիմէ թէ կամ զնոյն զարդարեն փոխել զերեսս և կամ զնա։ Որուն Ապտիւլ-Համիտ կը պատասխանէ, ոչ զեղ փոխեցից և ոչ զնա, եթէ դու զի [illegible] զերութեանն տես, և նա զեար զարդարութեանն տեսցէ (Դիի. Ժ. 263)։ Բայց Տէրէնտէլլիին եպարքոսութիւնը շատ չտեւեց, և յաջորդեց Մէհմէտ Իւմմի փաշա՝ Աղափաշա մականուանեալ, որ գործին մտադրութիւն դարձնելու չափ ալ առեն չունեցաւ, և պաշտօնի անցաւ արքունի զինակիրներէն Մէհմէտ Չիլիֆտար փաշա, Գարա-Վէզիր կոչուած, ոչ այնչափ խնդիրին կամ քաղաքականութեան, որչափ իւր շահուն և հաշուին հետամուտ անձ մը։ Անոր մօտ բաւական ընդունելութիւն գտան կաթոլիկամիտները, հինգ հարիւր քսակ գումարի համար մուրհակ յանձնելով, երբ իրենց նպատակը յաջողցնէ, և 300 քսակը հետզհետէ վճարելով։ Բայց Տէրէնտէլլիի և Իւմմիի եպարքոսութեան օրերուն ալ կաթոլիկամիտներու դէմ հրովարտակները իրենց կատարեալ ոյժը պահեցին։ Նալպանտօղլուն ալ չյաջողեցաւ իւր նպատակին մէջ, և բոլորովին տկարացաւ Տէրէնտէլլիին փոխուելուն վրայ։ Աքսորեալներ և բանտարկեալներ աւելի գլխաւոր նկատուած անձերէ եղան, իբր ցոյց և իբր ապաւորութիւն սփռելու միջոց, որովհետեւ որեւէ միջնորդութեան կամ համակերպութեան նշանի վրայ՝ իսկոյն եռ կը կոչուէին կամ բանտարկութենէ կ'ազատէին։

**2135.** Պետրոս Զաքարեան մեծանուն թարգմանին՝ առաջ հրաման եղած էր որ Տարտանէլ մեկնի, իւր բուն պաշտօնատե-

զին, և միայն չերթալուն վրայ, նոյն տեղ բերդարգել զրկուեցաւ (§ 2131), բայց նոյն

ՀՄՈՄԷԱԿԱՆԱՑ ԳՈՐԾԵՐ

ինքն Տէրէնտէլիին՝ Զաքարիայի մօտ ըրած միջնորդութեան վրայ, թէ նա յօժար է տալ զգլուխն և հնազանդիլ քեզ, Զաքարիա դիւրաւ զիջաւ, որ Պետրոս ազատուելով ի կապանացն աքսորման՝ արտօնուի դառնալ անդրէն ի տեղի իւր (Դիւ. ժ. 264)։ Գլխաւորներէն մէկն էր նաև Պէնկլի Ռափայէլ, որ սակայն դարձեալ ցերեան իւր, և հօրը տեղ որդին ձերբակալեցին և 1778 նոյեմբեր 5'ին աքսորեցին, բայց յետ քանի մի տարւոյ ազատեցաւ վասն հրաժարելոյն իւր ուղղութենէն (ՍՐԳ.)։ Գաղղիոյ դեսպանին միջնորդութեամբ ալ՝ քանի մի աշխարհական ընդ երեք կրօնաւորօք թիապարտութենէ արձակուեցան (ՍՐԳ.)։ Այսպէս չարունակարար խստութիւն և թուլութիւն իրարու խառնուած էին, զի Զաքարիայի նպատակը, ոչ այլ ինչ էր առնել, եթէ ոչ ձեւեր գործածել առ ի դառնալոյ նոցա ի Բնէր ճանապարհէ իւրեանց, և ոչ թէ վրէժխնդրական բռնութիւն վարել։ Կրնանք իսկ աւելցնել, որ եթէ չատ յոյս ալ չունէր, որ հետեւեալները բերցէ ի քարոզն իւր, գոնէ կը հոգար որ չխօսի դասել մոլորացն՝ անխտիր ի յայտնի դաւելոյ (Դիւ. ժ. 265)։ Այդ միջոցին տեղի ունեցան Կուտինա կամ Քէօթահիա քաղաքի պատահարներն ալ, ուր կաթոլիկամիտներ տեղական իշխանութիւնը շահելով, յանկարծական յաջողութիւն ունեցան Ս. Սարգիս եկեղեցին գրաւել հանդերձ ստացուածօքն, և կապարել զգլխաւորս նոցա։ Հազիւ թէ լսեց Զաքարիա, յատուկ պետական հրամանագրով հոն զրկեց Յարութիւն Կեսարացի վարդապետը։ Կաթոլիկամիտներու գլխաւորներէն երկուքը միայն՝ Եսայի Տէր-Գալուստեան և Սարգիս Դաւիթեան աքսորուեցան իբրեւ օրինակ, եկեղեցին և ուսումնարանը ետ առնուեցան, և մնացեալները խկոյն հպատակեցան, վարդապետին ձեռք երդմնագիր տալով, որ եթէ երբեք նորէն ոչ հնազանդին պատրիարքարանին, եղիցին ինչքն մեր յարքունիս, և անձինք մեր յաքսոր և ի ծառայութիւն նոցա (Դիփ. ժ. 255)։ Այս քանի մը մանաւոր դիպուածները յիշեցինք, որպէս զի ընդհանուր կերպով եղելութեանց ձեւն ու կերպը ցուցուցած ըլլանք։ Պատրիարքին և ազգին կողմէն եղածը, պաշտպանողական պայքար մըն էր՝ դուրսէն եկող Լատիններուն դէմ, որոնք կ'ուզէին հնաւանդ քրիստոնեաները իրենց նորակազմ քրիստոնէութեան դարձնել, ուրիշ նպատակ չունենալով, բայց եթէ իրենց ազգեցութիւնն ու իշխանութիւնը ընդարձակել միամիտ և խեղճ Արեւելցիներու վրայ։ Հարկաւոր ընդարձակութեան պէտք կը զգային, քանի իրենց իշխանութիւնն ու ազդեցութիւնը կը նուազէր Արեւմտեան ազգերու, մանաւանդ Գերմանական և Անգլիական տարրներու վրայ։ Իսկ Հայերուն մէջէն իրենց հրապոյրներուն հետեւողներէն մէկ մասը՝ ուսման և զարգացման փափաքէն մղուած՝ լատինական դաւանութեան համամտութիւնը իբրեւ անհրաժեշտ միջոց կը նկատէին. իսկ ուրիշ մաս մըն ալ արտաքին դիւրութեանց և նպաստից և պաշտպանութեան բարիքը կը տեսնէին Լատիններու մօտաւորութեան մէջ։ Սակայն ասոնցմէ աւելի բարձր պէտք էր ըմբռնել ճշմարիտ ազգասէր և ճշմարիտ կրօնասէր հոգին, որով կը գործէին պատրիարքն ու ազգը՝ հայրենաւանդ ուղղութենէ և հնաւանդ ուղղափառութենէ չբաժնուելու համար։

2136. Չիլիֆտարին կաշառակուրծ միտումէն օգտուելով և 500 քսակի խոստումով

ԴԱԴԱՐԻ ՄԻՋՈՑ

անոր մօտենալնին, յայտնի կերպով կը յատկանշէ լատինամիտներու այժն ալ դիտումն ալ։ Շատ ժամանակ խորհրդով Մէհմէտ Չիլիֆտար եպարքոսէն սպասածնին էր, զի ցանկալ այլ ինչ առաջի յառաջ պատրիարքին և եկեղեցեաց, որ եթէ յաջողէր, յանձն կ'առնէին եւս քահանայ քահանայից ազգ խաղաղութեան արտաքնական տալ (ՍՐԳ.)։ Այդ խորհուրդին, զոր ուրիշ տեղ ալ յիշեցինք, ձեռնտու էին Լատին դեսպաններն ալ և գլխաւորապէս Գաղղիականը, որ իրեն ազդեցութեան համար յատուկ շրջանակ մը ունեցած պիտի ըլլար։ Չիլիֆտար դիւանագիտական տեսութիւնները Ապտիւլ-Համիտ կայսեր միտքը չփոթելու գործածեց, և մինչեւ իսկ մին առնել եւ պատրիարքին ընդ հնազանդութեամբ անկանել, ըսելով՝ ի՞նչ ժամանակ մի

տանել ղայս կալտը․ որովհետեւ չհամարձակեցաւ պաշտօնապէս եռ առնել տալ այն հրովարտակները, որ կանուխէն արձակուած էին օտարասէրներուն դէմ (§ 2131)։ Զաքարիա խոհեմութիւն սեպեց իւր ձեռնարկը թուլցնել, այլ ոչ դադրեցնել, նախադասելով Ճեղմըզէն գործել, ուստի Ճէզի թուշէն եւ Ճէզի պօզէուն ըմիրնայը, Ճինչէ ջըտանել տայն Զիլիֆտար վեզիրէն, որ 1779 առաջին ամիսներուն մէջ պաշտօնի անցած ըլլալով, 1781 փետրուար 8'ին մեռաւ ի օըլխոյ ոէտէ (ՍՐԴ.), որ է փայծաղնացաւ։

**2037**. Եղելութիւնք այդ վիճակի մէջ էին Կ-Պոլսոյ մէջ 1780 տարւոյն կէսերը, երբ յանկարծ անակնկալ գործ մը, և անհաճոյ գործ մը, բոլորովին ուրիշ կողմ դարձուց Զաքարիայի գործունեայ աչխոյժը։

ՍԻՄԷՈՆԻ ԱՐԴԻՒՆՔՆԵՐ

Մայրաթոռոյ գահակալ Սիմէոն կաթողիկոս կը վախճանէր, և միաբանութիւնը կը չտապէր յաջորդն ալ ընտրել և օծել։ Սիմէոն կաթողիկոսի արդիւնաւոր գործունէութեանէն վերջին անգամ պատմեցինք տպարանի հիմնարկութիւնը 1771'ին (§ 2122), թղթագործարանի հաստատութիւնը 1776'ին (§ 2123), և Նոր տօնացոյցի հրատարակութիւնը 1775'ին (§2128), որուն կիրառութիւնն ալ սկսած էր՝ 1777 տարւոյ կաղանդէն։ Սիմէոնի կեանքէն և արդիւնքէն չատացանք գլխաւոր կէտերը յառաջ բերել, քանի որ մեզմէ չէր կրնար սպասուիլ՝ որ կատարեալ կենսագրութիւն մը տանք, որուն համար նիւթեր ալ չէին պակսիր, մանաւանդ իւր յիչատակարանին երկու հատորներով հրատարակուելէն ետքը Գիւտ Աղանեան աւագերէցին հոգածութեամբ (ԴԻՒ. Գ. և ԴԻՒ. Ը.)։ Սիմէոնի արդիւնքներուն գլուխը կրնայ դրուիլ կրթութեան համար հոգածութիւնը, որով էջմիածին հաւաքեց Նալեանի և Պաղտասարի աչակերտութենէն ասջև եկողները, ինչպէս էին Յարութիւն Բասենցի, Պետրոս Բերդումեան, Սահակ Ահագին կրտսերը, Պետրոս Ղափանցին, Ներսէս Աչտարակեցին, որոնց հետ կրնան յիչուիլ, նաև Յովսէփ Արղութեան և Եփրեմ Ձորագեղցին (ԵՐՑ. Ա. 77)։ Բայց ոչ միայն իրրև ուսուցիչ, այլ և իբրև չինարար, մատենագէտ, վարիչ, քաղաքագէտ, տպագրիչ, մատենագիր, չատ ընդարձակ և չատ բեղմնաւոր արդիւնաւորութիւն ունեցաւ իւր կաթողիկոսութեան մէջ։ Նչանակելի է անոր ամէն կողմ տարածած հոգածութիւնը, և Յիչատակարանին մէջ տեսնուած թղթակցութեանց ցանկը՝ լուսաւոր կերպով կը հաստատէ թէ Հայ տարրին գտնուած ամէն անկիւնները, իւր մտադրութենէն վրիպած չեն, և ամէն տեղ հասած են իւր գիրերը՝ ուղղելու, խրատելու, յորդորելու և մխիթարելու համար։ Տպարանը զինքն երկասիրութեանց ալ հրապուրած էր, Տօնացոյցէն ետքը հրատարակեց Զբօսարան-Տաղարանի երկրորդ տպագրութիւնն ու Պարտավճարը։ Բայց չհասաւ տպագրել երկհատոր Թարգմանիչքը, և Պորփիւրի ու Արիստոտէլի, Անյաղթի ու Պրոկղի եռահատոր լուծմունքը։ Իւր գործերէն միայն Ջամբռը հրատարակուեցաւ 1873'ին։ Բազմաթիւ են նաև եկեղեցական գործերու համար անոր կազմած կանոնները, որոնք եթէ Յիչատակարանէն քաղուէին՝ կրնային կանոնագիրք մը կազմել։ Սիմէոնի գործունէութիւնը այնչափ աւելի զարմանալի կը դառնայ, որ ուժեղ ու տոկուն կազմութիւն ալ չունէր, նիհար էր մարմնով, ցաւագար և հիւանդկոտ, այնպէս որ 1778 գարունին դեռ 68 տարեկան եղած ատեն, բժիչկներ տեսնալով անոր անկեալ և հիւծեալ վիճակը, անհրաժեչտ դատեցին, որ էջմիածինի անսպառ օդէն հեռանայ, և Արագածի ստորոտը, Յովասուն բարձունքներու վրայ հաստատէ իւր բնակութիւնը (ԴԻՒ. Գ. ճղբ)։

**2138**. Բիւրակնի երթալէն հազիւ թէ ամիս մը անցած էր, որ Հերակլ Վրաց թագաւոր մեծ զօրքով Երեւանի կուսակալ Հիւսէյին խանին վրայ պատերազմի կուգար, վասնզի խոստացուած հարկը քանի տարիներէ իվեր անվճար մնացած էր։

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԱԳՆԱՊ

Հիւսէյին սարսեցաւ երբոր Վրաց բանակը եկաւ հաստատուիլ Համզաչիմանի գիւղը, և դեսպաններ հասուց Սիմէոնի, որ նորէն միջնորդութիւն ընէ Հերակլի առջեւ։ Սիմէոն մինչեւ իսկ մահճէց վեր ելնել կարող չէր, ուստի իւր կողմէն երկու արքեպիսկոպոսներ յղեց Հերակլի,

*Մկրտիչ Շառոթեցի տեղապահը և Գալուստ Աշտարակեցի աթոռակալը* (01 ՕՐԱ. 185), *և Հիւսէյնին վճարելու պատրաստականութիւնը երաշխաւորելով, հազիւ կրցաւ Հերակլը իւր բանակով ետ դարձնել, և վըտանգը հեռացնել: Այդ պարագային կը կապուի տպագրական մամուլի մը նուէրը Սիմէոնի կողմէ Հերակլի տրուած, որ վրացերէն տպագրութեան սկզբնաւորութիւնն եղած կը նկատուի* (Դիւ. Գ. ճզէ.): *Տարին բոլորեցաւ, Հիւսէյին խոստումը չկատարեց, և Հերակլ սաստիկ զայրացած*, 1779 *գարունին, նորէն իւր բանակին գլուխն անցած Երեւանի վրայ կը քալէր: Սիմէոն դարձեալ օդափոխութեան համար Օշական էր ելած: Հոն հասան Հիւսէյնի դեսպանները, թախանձելով և ստիպելով Երեւան երթալ, որ միասին հոգան՝ կուսակալը տագնապէն և երկիրը աւերածէ ազատել: Սիմէոն հակառակ սաստիկ տկարութեան ստիպուեցաւ չարժուիլ, Երեւան գալ, և նորէն միջնորդութիւն ընելու յանձնառու ըլլալ: Կաթողիկոսն ու միաբանները զգեստաւորուած և թափօր կազմած դիմաւորեցին Հերակլը, Աշտարակ գիւղի մօտերը. Սիմէոն խաչին վրայ երդուընցնելով ջանաց Հերակլը կասեցնել, որ դրամական գումարի մը համար մարդկան արիւն չթափէ և հայաբնակ երկրին խեղճութիւն չպատճառէ: Անհնար եղաւ Հերակլին պայրոյթը զիջուցանել, Հիւսէյնին խոստումները խաբէական նկատուեցան, և Սիմէոնի երաշխաւորութիւնը անբաւական: Երեւան Վրացիներէ գրաւուեցաւ, աւարառութիւնը բոլոր Երեւանի դաշտին մէջ տարածուեցաւ, ուր բոլոր Հայ գիւղեր էին որ կողոպտուեցան ու կոտորուեցան, և երեսունէ աւելի եկեղեցիներ քանդուեցան, բաւական թուով Հայ գերիներ տարուեցան, Էջմիածինի աթոռին վնասն ալ հարիւր հազարներու բարձրացաւ: Սիմէոն արտասովոր զոհողութեանց ալ ենթարկուեցաւ, ահագին բազմութիւն մը վանքի պարիսպին մէջ պատսպարելով և սնուցանելով, և խոշոր գումարներ փրկանք վճարելով* (Դիւ. Գ. ճզդ.): *Խեղճ կաթողիկոսը խորապէս յուզուեցաւ և անմխիթար վշտացաւ, այնչափ տարիներու ճիգերն ու արդիւնքները յանկարծ եղծուած տեսնելով, աւերն ու աւարը և կործանած գիւղերը նշմարելով, և անոնց խեղճութեանց լուրերը առնելով: Ձմեռուան վերահաս ցուրտը և Իմէրէթի Սողոմոն թագաւորին գլուխ քաշելը ստիպեցին Հերակլը ետ դառնալ, և Վրացի բանակը երկու ամիս միայն ետքը պարպեց Երեւանն ու գաւառը, երբ երկիրը անյոյս կործանման վիճակ էր առած: Փախուստն ու խուճապը, և բռնադատեալ գաղթականութիւնն ալ ամէն յոյս փճացուցուած էին:*

**ՍԻՄԷՈՆԻ ՄԱՀԸ**

**2139.** *Հոգւով ընկճուած, մարմնով հիւծուած, ցաւերով սուզուած, վշտագին օրեր անցուց Սիմէոն* 1779-1780 *ձմեռուան մէջ: Սրտակէզ եռանդով կը ջանար բան մը ընել, աթոռին վնասները և ժողովուրդին թշուառութիւնները դարմանել, այլ կը պակսէին իրեն անձնական ոյժն ալ, պահանջուած միջոցներն ալ: Ներքին և արտաքին ցաւերով շրջապատուած տակաւին կը տոկար. անտանելի վիճակի մէջ ձմեռն ու գարունը բոլորեց, և վերջապէս* 70 *տարեկան, բայց բոլորովին հիւծած հոգին աւանդեց*, 1780 *յուլիս* 26, *Վարդավառի կիրակի օրը ժամը* 4'*ին կէսօրուան մօտ* (ՇԱՀ. Ա. 231): *Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ մեռելոցի երկուշաբթին, և մարմինը թաղուեցաւ Ս. Գայիանէի գաւիթին հարաւակողմը: Տապանագիրը իբր իր բերնէն գրուած է* (Դիւ. Գ. ճզը.), *և անհաւանական չէ որ կանխաւ իրմէ յօրինուած ըլլայ: Սիմէոնի գործերուն և դիտումներուն մասին ինչինչ դիտողութիւններ ըրած էինք, գլխաւորապէս Կոլոտի նկատմամբ գրածներուն* (§ 1946), *Կ-Պոլսոյ պատրիարքութեան շուրջը ունեցած կարծիքին* (§ 2085), *և տօնացուցական կարգադրութեանց վրայ* (§ 2127): *Սակայն այդ չարգելեր որ չճանչնանք անոր վրայ այն վեհ և ընտիր հոգիներէն մին, որ իրենց արթուն միտքով, լուրջ ջանքերով և անխոնջ աշխատութեամբ՝ տիպար գործիչը կը կազմեն, և իրենց ժամանակին տիրապետող դէմքը կը դառնան: Իւր վրայ խօսած ատեննիս ջանացինք զանազան ճիւղերու մէջէն յիշել կարեւոր գիտելիքները, որպէսզի զգալի կերպով ցուցուի նորա բազմապիսի գործունէութիւնը, և այստեղ կրկին ամփո-*

*փելու պէտք չենք տեսներ։ Իրմէ մնացած յիշատակներէն ամենէն գլխաւորն է Մայր աթոռոյ վարչութեան և մատակարարութեան մէջ՝ կարգ ու կանոն և գիր ու արձանագիր մտցնելը, որ նոր ժամանակներու նըկարագիրը կը կազմէ, և Սիմէոն գրեթէ անոր հիմնադիրը եղած կ'ըլլայ։ Յիշատակելի է նաև վանական կամ միաբանական կառավարութեան մէջ իմաստութիւնը բռնութեան տեղ փոխանակելը։ Իր օրով դադարեցաւ խարազանին և գաւազանին իրրև խրատի և ուղղութեան միջոց գործածուիլը, որով իրմէ առաջ կը խոշտանգուէին ամենէն բարձրաստիճան և ամենէն պատկառելի եկեղեցականներն ալ (ԴԻԻ. Գ. ճղբ.)։ Տէր ողորմեա սրտառուչ աղօթքները, Առէ Աստուած զգայուն երգը, և Ամենասուրբ Երրորդութեան սովորական դարձած մաղթանքը, Սիմէոնի հեղինակութիւն են, որ իր ատեն իբրև կամաւոր աղօթք պատեհ առիթներու մէջ կը գործածուէին, բայց այնչափ մեծ ընդունելութիւն գտան, որ այսօր պատարագներու և Ենթոցէներու և հսկումներու իբրև պարտաւորիչ մաս նկատուած են ու կը գործածուին այնպիսի մտադրութեամբ մը, որ կարծես թէ Լուսաւորիչէ մնացած և անյիշատակ ժամանակներէն սրմառած ըլլային։ Երբ կը գիտենք որ այս մաղթանքները անարուեստ յօրինուած մը ունին, կը ստիպուինք անոնց մէջ յայտնուած զգացումին վերագրել՝ այդպէս սրտագրաւ եղած ըլլալը, և անոնց մէջ տեսնել Սիմէոնի եռանդուն և ազգասէր զգացումները։*

**2140.** *Սիմէոնի զգացումներուն մէջ նշանակելի կը գտնենք Հայ եկեղեցւոյ պահպանութեան մասին*

**ԴԱՒԱՆԱԿԱՆ ԶԳԱՑՈՒՄ**

*ունեցած նախանձայուզութիւնը, և անոր վարդապետութեան մասին ըզգացած խորին համոզումը։ Եթէ նա իւր գործունէութեան մէջ բուռն չեղաւ, և որչափ կրնար բուռն միջոցներէ խորշեցաւ, և կաթոլիկութեան միտեալ եկեղեցականներու՝ Սարաֆեան Սարգիսի և Բասենեան Յարութիւնի և նմաններու հետ հաշտ և բարեկամական յարաբերութիւններ պահեց, սրտաքին նպաստներ ալ ընձեռեց. այդ միմիայն չահեցողական ընթացքի հետեւանքն էր, և ոչ իրեն անոնց համամիտ կամ հակամէտ ըլլալուն նշան, ինչպէս համեմատաւան գըրիչներ կ'ուզեն մեկնել։ Կարծես թէ չեն կրնար ըմբռնել, թէ հնար ըլլայ տարբեր կարծիքի տէր եղողներու հետ ալ մարդասիրական և բարեկամական յարաբերութիւններ պահել։ Սիմէոնի ներքինին զեղուածը պէտք է տեսնել, իւր տպագրած տօնացոյցին յառաջաբանին մէջ (ՍԻՄ. 2), որուն մասին թէպէտ ինքն գրուէր տուած էր, թէ տօնացոյցին բոլոր նոր տպագրութեանց մէջ Բազում աւելացուցման և պակասեցուցման և առանց ընտրութեան դրեալքէ ընդ ֆրէոյ (ՍԻՄ. 556), սակայն սովորաբար զանց եղած է։ Սիմէոն, որ այնչափ սիրով տպագրական հրատարակութեանց նուիրեալ էր, զայրացմամբ կը բողոքէ այն հրատարակութեանց դէմ, որոնք Հռոմէ, Վենետիկէ և Թրիէստէ կը սփռուէին այն ատեն, իբր զի կ'ըսէր, ֆողանան զերեանս [illegible] որբոց [illegible], և պակասեալ [illegible] զբան [illegible], և բառ [illegible] [illegible] [illegible] և [illegible], [illegible], [illegible] և [illegible] յաւել[illegible] մեր (ՍԻՄ. 547)։ Ասով կ'ակնարկէ Հռոմի կողմանէ իբր թէ սրբագրութեամբ, այլ խակապէս աղաւաղմամբ, հրատարակուած ծիսական գիրքերուն, որոնց Վենետիկն ու Թրիեստն ալ ստիպուած էին հպատակիլ։ Նաև կը զգուշացնէ ազգայինները հետեւելու այդպիսի հրատարակութեանց կիրառութենէ, որոնք գործ են կ'ըսէ Նորաբոյս Լութերականաց (ՍԻՄ. 16)։ Այս անունով կաթոլիկներուն կ'ակնարկէ, չուզելով թերեւս ուղղակի իրենց կոչումը տալ, և իրարու խառնելով համեմատաւանները և բողոքականները, այսինքն առհասարակ Հայ եկեղեցւոյն դէմ մաքառող Արեւմտեան քրիստոնեաները։ Սակայն առաջիններ Հայերուն դաւանութիւնը պակասաւոր կը գտնեն, մինչ երկրորդներ աւելորդով բեռնաւորուած կը կարծեն, և իրարու համամիտ չեն։ Անլուրմար չէր ըլլար աւելցնել, թէ երկու ծայրերուն բաղդատմամբ՝ միջինը ապահով և ուղիղ պէտք է ընդունիլ, ծանօթ առածին համաձայն։ Սիմէոնի ներքին համոզման իբր կնիք յառաջ կը բերենք իւր հայրապետական վեհ յայտարարութիւնը, Հաւատն մեր ոչ է հնացեալ ոչ նորոգեալ, և*

ու է Թերէ՝ զի լուացէ· այլ շնորհօքն Քրիստոսի ասեմք ի սրբոյ Լուսաւորչէն մերմէ և ի նորին Ճառագայթիցն զհաստատեալ հաւատս, զորմէ դաւանութիւն, և զեկեղեցին աստուածութեանն սրբոյ եկեղեցւոյ, որ Թագակալ է մեզ ի երկնութենէ և ի կենաց յաւիտենականաց տալ: Որ և զնոյ և երաշխաւոր եմք պահել զնա առաջի Քրիստոսի և սրբոյ Լուսաւորչին մերոյ ի հանդերձելումն, զի եթէ ոք ընդ այս հաւատոյս և դաւանութեան, զոր ասէ եկեղեցիս Հայաստանեայց, ասիցէ նաև զգործբարիս ըստ պատուիրանին Քրիստոսի, անկարծելի ժառանգելոց է զկեանս յաւիտենականս (ՍԻՄ.551)։

**2141**. *Այդ վսեմ և ուղղամիտ զգացմանց հանդէպ, կարի կը նուաստանան այնպիսիներ, որոնք վարժ մարմնական հեշտութեան և անձանց որկրամոլութեան խորհրդոց, ինչպէս կը գրէ Սիմէոն,* յորէն յայլազգիս պրկոտնեիցը՝ որք զերծ էին թագաւորութեամբ և հարստութեամբ, և ազատ ի մարմնական պակասութեանց յայլազգական բռնութեանց, *սակայն գացած անգլերնին էբրև* զԳաբաւոնացիս են համարեցեալ, և յայս որոց միջի արհամարեցեալ (ՍԻՄ. 545)։ *Այդ տարագէպ ուղղութեան հետևողներուն առաջին կարգին մէջ ցուցուցինք Սարգիս Սարաֆեան եպիսկոպոսը, զոր վերջին անգամ տեսանք Նալեանի, բանիւ և գրով հակամէտականութեան դէմ մաքառողի մը, լիարերան գովեստները հիւսել (§ 2084), և մաղթողական հայցուածներով իւր խօսքը կնքել, որ* Աստուած շնորհէ երանելոյ գործերորդս այսորիկ ի լուսեղէն խորանն ընդ սրբոց իւրոց զմայլեցուսցէ փեսայութեամբ իւրով *(ԳԱԼ. 309)։ Սարաֆեան չարունակեց Ղալաթիոյ քարոզչութիւնը վարել Պասմաճեանի օրով ալ, ուր իւր կաշկանդուոր ընթացքը քահանայից մէջ դիտողութեան առիթ կու տայ 1766'ին, բայց իւր ճարտար դարձուածով և Պասմաճեանի հաշտարար միջամտութեամբ միջադէպը կը փակուի (ԳԱԼ. 110)։ Սակայն Սարաֆեան՝ Ցարութիւն Բասմնեան նուիրակին Ղալաթիոյ նուիրահաւաքութեան ձեռնարկելէն օգտուելով, տեղը անոր կը թողու և ինքն Օրթաքէօյի եկեղեցին կը փոխադրուի, ուր կը մնայ մինչև 1772։ Սարաֆեանի աշակերտը, իւր վարդապետէն առնելով կը պատմէ, թէ Սիմէոն ուզած ըլլայ 1771'ին, կարգել զայն մեծ Նոտարով ի չէն Պոլսէ, բայց լաւ խորհած է աւելցնել, թէ Սիմէոն գրեր էր խօսիլ Թղթոյն (ԳԱԼ. 115), որովհետև Սիմէոնի յիշատակարաններուն մէջ այսպիսի ակնարկ մը չկայ։ Ընդհակառակն 1767'էն ի վեր Զաքարիա Կաղզուանցին կը վարէր Կ-Պոլսոյ նուիրակութիւնը (§ 2118), և երբեք Սիմէոնի միտքէն անցած չէր զայն փոփոխել։ Պասմաճեանի ալեկոծ պատրիարքութեան ատեն, թերևս յուսացած է Սարաֆեան անոր անկումէն օգտուիլ, բայց հետզհետէ Զաքարիայի զօրանալը տեսնելով, և Օրթաքէօյի մէջ ալ իւր ընթացքը քահանայական դասուն նոր դիտողութեանց առիթ տալէն ազդուելով, Կ-Պոլիսէ հեռանալու որոշման կը գայ, և Ցարութիւն Պետանեանի օգնութեամբ (ԳԱԼ. 321),* ճողոպրբոյց ելեալ *(ԳԱԼ. 117) մայրաքաղաքը կը թողու 1772 սեպտեմբեր 29'ին, և 24 օրուան նաւարկութեամբ Մարսիլիա կը հասնի հոկտեմբեր 23'ին (ԳԱԼ. 118)։ Իբր 40 օր հոն մնալէ ետքը Անթիպ, Գենուա և Բիզա (Antibes, Genova, Pisa) հանդիպելով դեկտեմբեր 18'ին կը հասնի Լիվոռնօ, ուր ծանր և վտանգաւոր հիւանդութեամբ կը տառապի մինչև 1773 փետրուար։ Ամիսէ մը հիւանդութիւնը կը նորոգուի, բայց դարձեալ վտանգը կ'անցընէ, և թէպէտ Հռոմ երթալ կը փափաքի, և Վենետիկէ Ցովհաննէս Սեղբոսեանէ կը հրաւիրուի, սակայն ունեցած ախտին՝* Չքնաղութեան որոյ յոյժ հէն *յայտնուելուն վրայ (ԳԱԼ. 124), կեանքէն յոյսը կը կտրէ, կտակը կը պատրաստէ, և սեփական գերեզման ալ կը շինէ, և 1773 հոկտեմբեր 2, առաւօտեան ժամը մէկին կը վախճանի և կը թաղուի հանդիսաւորութեամբ Անտոնեան միաբան հայր Կարապետ Հալաճեանի, որ* Հայոց թեմոյս ժողովրդապետ *էր (ԳԱԼ. 130)։ Սարաֆեանի յերկյեղուկ կեանքը բաւական է իւր նկարագիրը ցուցնել, ուստի աւելորդ կը սեպենք այդ կէտին վրայ անդրադառնալ։*

**2142**. *Կոստանդնուպոլսոյ մէջ տիրող չփոթ կացութեան միջոցին, մէկ կողմէն Արևմուտքի հանգստութիւնը, և Արևմուտք դիմողներուն նպաստաւորուելուն հերապոյրը, միւս կողմէն պաշտօնի մրցակիցներէն ամանց անյաջողութեան մատնուիլը,*

աւելցնենք լաւագոյն բախտի մը հանդիպե-
լու ակնկալութիւնները, կողմնակիցներ չա-
հելու համար պապական քարոզիչներու և եւրոպա-
կան դեսպաններու թափած ճիգերը, եկեղեցա-
կաններէ ոմանց առիթ ընծայեցին Արեւելքէ
հեռանալ և չունչերնին Արեւմուտք առնել,
ուր հաստատուած կամ ապաւինած ազգային-
ներ դիւրակեաց վիճակ մը ունենալ կը կար-
ծուէին։ Այդ շարժումին մէջ պէտք է զա-
տել զարգացման նպատակով և դաստիա-
րակութեան փափաքով գացող դեռահաս-
ները, որոնք հռոմէադաւան միաբանու-
թեանց կամ վարժարանաց աշակերտու-
թիւնը կը կազմէին, և մինչեւ մէկ աստի-
ճան իրենց գործը գեղեցկացնելու պատրուակ
կրնային գտնալ։ Հռոմէադաւան գրիչներ
ասոնցմէ շատ աւելի կարեւորութիւն կ'ըն-
ծայեն՝ Հայ եկեղեցւոյ մէջ յառաջացող
եպիսկոպոսներէ ոմանց, որոնք իրենց ըն-
թացքին վերջերը Արեւմուտք անցնելու և
այնտեղ ստիպեալ հռոմէադաւանութեան
հետեւելու հարկին ներքեւ գտնուած են։
Ասոնց գործը իբր հռոմէադաւան դատին
ուղղութեան և ճշմարտութեանը փաստ
կը ներկայացուի, սակայն մեր կարծեօք
շատ տկարացած կը մնայ հռոմէադաւանու-
թեան դատը, եթէ իւր ոյժը այսպիսի-
ներուն հեղինակութենէն պիտի ստա-
նայ։ Ընտրելագոյն օրինակն է Սարաֆ-
եանը, մերթ այս և մերթ այն կողմը դի-
մող, մերթ այս և մերթ այն եկեղեցւոյն
ծառայող, մերթ այս և մերթ այն վարդա-
պետութիւնը քարոզող։ Ուստի եթէ քանի
մի տասնեակներ ալ կարենան համրել այս-
պիսի անուններէն, չենք կարծեր թէ զօրա-
ւոր փաստ մը կազմած ըլլան իրենց ընդ-
գրկած հռոմէադաւան դատին պաշտպանու-
թեան։ Մենք, անկախաբար գործին տրուած
նշանակութենէն, չենք ուզեր զանց ընել
գոնէ գլխաւորներուն անունները, քանի որ
պատմական եղելութեանց կարգը կը մըտ-
նեն։

**ԿԱԹՈԼԻԿ ԵՂՈՂՆԵՐ**

**2143.** Նախ յիշենք Յարութիւն եպիս-
կոպոս Բասենցին, կամ Բասենեան՝ ինչպէս
ինքն կը ստորագրէ (ԳԱԼ. 323), որ 1767'ին
Կ-Պոլսոյ մայրաքաղաքին նուիրակութիւնը
փակելով, յուշուէն վէճական եղած (§ 2118),
և աւելի Պրուսայի կողմերը զբաղած կ'ե-
րեւի։ Բասենցիին համար

**ՅԱՐՈՒԹԻՒՆ ԲԱՍԵՆՑԻ**

գրուած է թէ 1771 օ-
գոստոս 14'ին ֆախէ-- է Թրեօդ (ՊԼՐ. 435)։ Սա-
կայն սա ալ միւսներու նման նորէն ետ
եկած կ'երեւի, վասնզի 1775 յունուար 15'ին
կը գտնենք, որ Բասենցին նորէն Պրուսա է,
և Պրուսացին, տան ելայ յատադ, երկէլցօ էաւ էէն
ֆրեւլ ֆանֆող կաթողիկոսին անոր դէմ, և
թէ նա կարէ անպաշէա և է տաղատէօ (ԴԻՒ. Ը.
315), և բէ որտան ձեայ անդ, ժէլը յանորֆ---
բէնէ յանորֆաբէան ընբանայ (ԴԻՒ. Ը. 316)։
Կաթողիկոսը կը հրահանգէ որ Բորց կործ-
եաց եկէալ եկէօցէ է ...րք ...բնօ, բայց
Բասենցին եբնչէ երթալ (ԴԻՒ. Ը. 315)։ Ակէ
ետքն է որ կը լսուի, թէ է պան Տաճկէ է
անկէալ, սակայն կը ստուգուի, թէ է պան
Լամսայէ էլչուն, այսինքն Նէմցէի կամ Աւստ-
րիոյ դեսպանին էր անկէալ, հարկաւ Կ-
Պոլիս գալէն ետքը, և յայտնալէօ ցուցեալ
չհէրչասաձն և ղուրացուբէանն էօր (ԴԻՒ. Ը.
511)։ Այդ լուրը 1776 հոկտեմբեր 11 թուա-
կանով է արձանագրուած. սակայն եղելու-
թեան թուականը ճշդուած չէ։ Շփոթ են
այդ թուականէն ետեւ Բասենցիին համար
գրուած տեղեկութիւնները. 1773'ին փախ-
չելու մտադիր կը ցուցուի (ԳԱԼ. 362),
մինչ 1775'ին պաշտօնի վրայ է. 1776'ին
օտար պաշտպանութեան կ'ապաւինի, մինչ
կրկին փախուստի առթիւ բաւական ատեն
Հռոմ և Վիեննաիկ մնալէ ետքը, 1781 օգոս-
տոսին Թիֆլիս հասած կ'ըսուի (ԳԱԼ. 362),
ուսկից ինաւ չհետեւիր որ 1781'ին Կ-Պոլիս
գտնուած ըլլայ, ինչպէս Բասենցիի պաշտ-
պաններ կ'ուզեն ըսել (ԳԱԼ. 363), որպէս
զի զայն արդարացնեն նուիրակութեան ար-
դիւնքները և աթոռապատկան գումարները
իւրացուցած և միասեղ տարած ըլլալու
մեղադրանքէն (ԴԻՒ. Դ. 852)։ Բասենցին
1776'ին օտար պաշտպանութեան ապաւի-
նած էր, և այն ատեն կենդանի էր Սիմէոն,
և իրաւամբ կրնար դիմել Բասենցիին անձը
հովանաւորող դեսպանին, որ գողօնին վրայ
ալ չտարածէ իւր պաշտպանութիւնը։ Դես-
պանը, աւելի ուղղամիտ քան Բասեն-
ցիին գովաբանը, ընթացք կու տայ կաթո-

ղիկոսին իրաւացի դիմումին։ Բասենցիին միացած կեանքը անցած է Թրիէստի մէջ, ուր միացած է երկեալ ութ ամօք՝ Վենետիկէ անջատուած Մխիթարեաններու մօտ, 1781'է մինչեւ 1796, եւ Հոքի–րամենի վախճանած է 1796 մարտ 17'ին ըստ տապանագիրին (ԳԱԼ. 365), կամ մարտ 14'ին ժողովրդապետական արձանագրութեան համեմատ (ԳԱԼ. 366)։ Հայերէն տապանագիրին մէջ արքեպիսկոպոս Էջմիածնեցի գրուածը (ԳԱԼ. 365), որ պարզապէս Էջմիածինէ եպիսկոպոսութիւն առած ըլլալը կը ցուցնէ, չենք գիտեր ինչ հիմամբ արհիեպիսկոպոս Էջմիածնի կոչուած, եւ իբր տիտղոս մեկնուած է (ԳԱԼ. 306), մինչ Էջմիածին երբեք վիճակի կամ եպիսկոպոսական աթոռի տիտղոս եղած չէ, եւ տապանագիրին լատիներէնին մէջ ալ միայն Հայ արքեպիսկոպոս (archiepiscopo Armenio) ըսուած է, եւ յատուկ տիտղոս տրուած չէ։ Մեր պատմական նպատակին համար բաւական ըլլայ գիտնալ, թէ նուիրակութեան արդիւնքը սեփականելու պատճառով տեղի ունեցած է Բասենցիին կաթոլիկանալը։

**2144**. Աւելի զրուցուածներէն մէկն ալ Սամուէլ Երզնկացի, Պրուսայի եպիսկոպոսն է։ Սամուէլ Կոլոտի կրտսերագոյն աշակերտներէն էր, 1706'ին ծնած (ԳԱԼ. 262)։ Նալեանի փոխանորդութիւնը վարեր էն եւ է (ԳԱԼ. 59), գլխաւոր պաշտօնը եղաւ Պրուսայի առաջնորդութիւնը, ուր արդիւնաւոր գործունէութիւն ունեցաւ, այնպէս որ Նալեան վատառողջութեան համար քաշուելու բռնադատուած, Սամուէլը իբր յաջորդ առաջարկեց, բայց Սամուէլ յանձնառու չեղաւ պատրիարքական տագնապին մտնելու (§ 2080)։ Շամախեցիի մահուանէ ետքն ալ՝ կաթողիկոսութեան ընտրելիներուն կարգին Սամուէլ ալ նկատի առնուած էր (§ 2069) Աստապատցիին առաջարկութեամբ (Դիւ. Գ. Յ.)։ Սակայն ասոնք պարզ առաջարկներ էին եւ բուն ընտրութիւն չէին կրնար ըսուիլ։ Սամուէլ ոչ եւս երիտասարդ, 66 տարեկան էր, երբ ինքն ալ փորձուեցաւ Արեւմուտք անցնիլ հանգստութեան եւ բարօրութեան ակնկալութեամբ, եւ Սարաֆեանի հետեւողութեամբ, որ իւր աշակերտակիցն էր, եւ

SAMOUEL ԵՐԶՆԿԱՑԻ

ՍԱՄՈՒԷԼ ԵՐԶՆԿԱՑԻ

կ'երեւի թէ սա մեծամեծ բախտաւորութիւններ ցոլացուցած էր անոր աչքին եւրոպական կենցաղին մէջ։ Սամուէլ Կիպրոս քաշուելու պատրուակով Պրուսայէ կը մեկնի 1772 նոյեմբեր 3'ին, Կ-Պոլսոյ մէջ իւր գործերը կը կարգադրէ եւ Յարութիւն Պեստմալեանի ձեռքով նաւագնացութեան պէտքերը կը հոգայ, եւ դեկտեմբեր 4'ին Քուրուչէշմէէ Քրզգուլէ կ'անցնի, եւ անկէ նաւ մտնելով 18 օրէն Մալթա (Malta) կը հասնի, որ է ըսել դեկտեմբեր 22'ին ձմեռնային եղանակին մէջ (ԳԱԼ. 267)։ Անկէ անդին նաւագնացութիւնք կը դժուարանայ, երկու անգամ Մարսիլիա երթալու, եւ երկու անգամ ալ Իտալիա անցնելու համար նաւ կը մտնէ, բայց քիչ յառաջելէ ետքը՝ չորս անգամ ալ ետ կը դառնայ, եւ այս կերպով բաւական ատեն կ'անցընէ Մալթայի մէջ, մինչեւ որ վերջին անգամ 12 օրուան նաւագնացութեամբ Մալթայէ Չիվիթավէքքիա (Civitavecchia) կու գայ, եւ Հռոմ կը հասնի մայիս 12'ին (ԳԱԼ. 270) կամ 3'ին (ԳԱԼ. 272), որ ամարներու տարբերութեամբ 2/12 կամ 3/13 պէտք է ըլլայ։ Սարգիսի եւ Սամուէլի իրարու ետեւէն եւ գաղտնի կերպով Կ-Պոլիսէ հեռանալն էր, որ Պասմաճեանի կամակցութեան վերագրուելով, անոր դէմ ամբաստանութեան կէտ մը կազմեց (§ 2114)։ Հռոմ հասնելուն յուսախաբ մնացած կը տեսնուի Սամուէլ, եւ Սարգիսի գրելով կը յայտարարէ. Զինչ աննեղ ու փէտեմ, ամենայն կողմանց շատրեալ կեամ, Աստուած ամենակալ է Բէկեանս հասեալ օգնեսցէ մեզ. Աստուած աղօթ դահէ ըմեղ է փոյթակցաբենէ (ԳԱԼ. 268)։ Վերջին խօսքը կը ցուցնէ թէ Սամուէլ համէադաւանութիւնը ընդունած չէր յառաջագոյն, փորձի համար եկած էր, եւ փորձին սկզբնաւորութիւնը յաջող չտեսնելով, դաւանութեան մէջ գթելէ կը զգուշանար։ Այս է Սամուէլի միտքին ուղիղ մեկնութիւնը, եւ ոչ թէ հայր Ներսէսեանի գրելուն յենլով, թէ է Բաղմաց հետե լաեալ են ղատր Նորէն, քրեբե 30 ամ է վեր, հետեւցնել թէ Սամուէլ 1743'էն ի վեր համէադաւան եղած ըլլայ (ԳԱԼ. 270)։ Ներսէսեանը Սամուէլի անունն է լսած իբրեւ նշանաւոր եպիսկոպոսի մը, դաւանութեան մասին ակնարկ չունի բնաւ։ Բայց անգամ մը որ Հռոմ են-

*կած էր, անոր չուրջը պատեցին, որ գոհա-ցընեն և վար դնեն։ Համնելէն 40 օր ետքը 1773 յունիս 26'ին վիճակը տակաւին անո-րոշ է, և Փրոփականտա* կը յուսայ նորէն տեսնել Պրուսայի եպիսկոպոսին գործը։ *Իսկ 1773 հոկտեմբեր 18'ին Վենետիկ կը գտնուի, ուր փոքր աստիճաններու ձեռնադրութիւն կը կատարէ. վերջապէս 1774'ին Ուռնուտեան Սիմոն եպիսկոպոսի մահուանէ ետքը անոր կը յանձնեն Հռոմի մէջ ձեռնադրիչ եպիս-կոպոսի պաշտօնը (ԳԱԼ. 271)։ Սամուէլ ա-ռաջին անգամ Հռոմ համնելուն գրած էր, թէ* ի յԱրեւելս դառնալն ինձ անկարելի է *(ԳԱԼ. 268), զի հարկաւ թեթեւամտութիւն պիտի սեպուէր իր արարքը։ Բայց տարի անցնե-լով, և յուսախաբութիւնը աճելով, և խիղճն ալ պարտուելով, անկարելին իրական ըրած է, զի 1778 հոկտեմբեր 6'ին, զինքն արդէն Կ-Պոլիս դարձած կը գտնենք (ԳԱԼ. 273)։ Զաքարիա պատրիարքի համէնաշխատններ-րուն դէմ 1778 փետրուար 21 ժողովով սկսած շարժումին ակնարկելով (§ 2129) ըս-ուած է, թէ* եղեւ դրդեալ և յորդորեալ ի յետս դարձմանէ Սամուէլի *(ԳԱԼ. 273), ինչ որ կը ցուցնէ թէ 1778 տարւոյ սկիզբներէն Սամուէլ արդէն Կ-Պոլիս կը գտնուէր, և միանգամայն համէնաշխատնութեան դէմ ազգու գործիչ մը եղած էր, հարկաւ Հռոմը տեսնելէն և ուսումնասիրելէն ետքը՝ խելու-թեան վերահասու ըլլալուն պատճառով։ Սամուէլ կեանքին մնացորդը անցուցած է Խասքէօյ թաղին մէջ, իբրեւ եկեղեցւոյն քարոզիչ, ուր և վախճանած է 1786'ին 80 տարեկան, և գերեզմանը կը գտնուի Խաս-քէօյի գերեզմանատան մէջ։ Այս է Սամուէլ Երզնկացիի ընթացքը, որ աւելի աննպաստ փաստ մը կը դառնայ համէնաշխատնութեան դատին։*

**2145.** *Քաղենք եւս Գրիգոր Պասմաճ-եանի կեանքին վերջին մասը, որուն նկատ-մամբ խօսած ենք մինչեւ 1777 ապրիլին Անքօնա բնակութիւն հաստատելը (§ 2117)։ Այդ թուակա-նէն մինչեւ 1782 Պասմաճեան Անքօնա կը մնայ. բայց վերջէնվերջ կը ձանձրանայ, վասն զի Լատին լեզուի հմուտ չըլլալով, եկեղեցական պաշտամանց չկրնար հետեւիլ, իսկ Հայոց եկեղեցին և քահանան ալ չատ անչուք ըլլալով զինքն չեն գոհացներ (ՊԱՍ. 35)։ Պասմաճեան Վենետիկ կը հասնի 1782 ապրիլին, միջոց մը ասպնջականութիւն կը վայելէ* ի վանեցւոց Հայոց *(ՊԱՍ. 36), այսինքն Ս. Ղազարու Մխիթարեան միաբաններէն, և յետոյ կը հիւրասիրուի* Ովանէս աղայի Սեղ-բոսեան կոչեցելոյն *կողմէ (ՊԱՍ. 36), որ է նոյն ինքն Սեղբոս մարքիզը։ Վենետիկ մնա-լուն տեւողութիւնը, ցուցուած է* վեց եօթն ամս ըստ հրամանի սուրբ ժողովոյն Փրոփական-*տայի (ՊԱՍ 132)։ Չկրնար հաստատուիլ որ յետոյ նոր արտօնութեամբ կրցած ըլլայ այդ պայմանաժամը երկարել։ Թէպէտ կը գրէ, թէ* յետ երկուց ամաց ժամանելոյն իմոյ որ էր Բաղկանն 1784 ի մէջ մարտի ամսոյ, դիպեցա-ւս մեզ անբժշկելի և անյեղելի ցաւս իշխանծոյ, *որով երկու տարին Վենետիկ համնելէն հաշուիլ կ'երեւի,* մանաւանդ որ ի ժամանակի և ի յաւուր տկարութեան *ընդունած գութն ու խնամքը Ս. Ղազարու միաբաններուն կը վերագրէ, որոնց մօտ եղաւ Վենետիկ համնելուն առջի օրերը, և սակայն* տկարու-թեան *ըսածը, ոչ իջուածքին, այլ մամնա-ւոր տկարութեան մը վրայ պէտք կ'ըլլայ մեկնել։ Իսկ մեծ տկարութիւնը խնամուած է ոչ Վենետիկի ասպնջականներէն, այլ* ընտանութեամբ և նպաստաւորութեամբ սրբոյ ժողովոյն Փրոփականտայի կոչեցելոյ *(ՊԱՍ. 36)։ Ըստ այսմ հաւանական չէ մինչեւ 1789 Վե-նետիկ մնացած ըլլալը (ԳԱԼ. 349), և հաւա-նականն է 6-7 ամիսէն Անքօնա դարձած, և հոն 1784'ին կաթուածահար ըլլալը (ՊԱՍ. 132)։ Անքօնայէ 1789'ին գրած նամակներէն մէկուն մէջ ալ կ'ըսէ, թէ* ահա մերձեալ է ի լնուլ հնգից ամաց, որ ողջով մարմնովս տառա-պեմ և դողդողեմ, *որով ամբողջ հինգ տա-րիներ չարունակ միեւնոյն տեղ մնացած ըլ-լալ կը ցուցնէ։ Ցիչեալ 1789 տարւոյն մէջ է, որ հարկաւ ինքզինքը քիչ մը կազդուր-ուած զգալով յիշատակութիւններ կը գրէ, և ամէն կողմ գիրեր կը տեղացնէ, վեր-ջինը 1789 սեպտեմբեր 4'ին (ՊԱՍ. 129), իր անցեալը պատմելով, իր ընթացքը պաշտպանելով, և ուրիշներուն հետ բաղ-դատութիւններ հաստատելով։ Այդ թուա-կանէն ետքը տակաւին իբր տարիուկէս եւս կ'ապրի Պասմաճեան, և կը վախճանի 1791*

ՊԱՍՄԱՃԵԱՆԻ ՄԱՀԸ

յունիս 22'ին, բայց ոչ Անքոնայի, այլ Թրիէստի մէջ, ինչպէս կը քաղուի նոյն քաղաքին Հայազգի մկրտելոց և պսակելոց և ննջեցելոց տումարէն (ՏԱՇ. 924), որուն մէջ յայտնապէս գրուած է վերոյիշեալ թուականով, թէ Վախճանեցաւ ծերունազարդն Գրիգոր Վարդապետն Աստուածատուրեանց, որ էր պատրիարք ամենայն Հայոց Կոստանդնուպօլսի, էր 78 ամաց, և թէ թաղուեցաւ Ս. Ցուստոսի (San Giusto) մայր եկեղեցւոյն դրան առջեւ (ԳԱԼ. 357)։ Այլ թէ ե՞րբ և ինչպէ՞ս և ինչո՞ւ Անքոնայէ Թրիէստ փոխադրուեցաւ, բնաւ տեղ մը բացատրութիւն չենք գտներ։ Եւս առաւել առանց բացատրութեան կը մնայ, թէ ինչպէս Պասմաճեանի ինքնագիր գրուածները, և անոր սեփականութեան գիրքերը Անտոնեանց Հռոմի՝ և անկէ Օրթաքէօյի վանքը կը գտնուին, մինչ յարմարագոյն էր Մխիթարեանց Վիէննայի վանքը գտնուիլը, քանի որ Թրիէստ մեռած ու թաղուած է։ Տապանագիրի մըն ալ պատճէնը, որ նոյնպէս Անտոնեանց դիւանին մէջ կը գտնուի, առանց մահուան թուականի, կ'երեւի նոյն իսկ Պասմաճեանէ կանուխէն պատրաստուած էր, բայց գործածուած չէ. գոյ պանդխտէ յայսմ քաղաքէ բացատրութիւնը՝ Անքոնայի համար ըսուած է (ՊԱՍ. 129), ուր գրած ատեն կը գտնուէր, և անկէ տեղափոխուելու միտքը չունէր։

**ՊԱՍՄԱՃԵԱՆԻ ԳՐՈՒԱԾՆԵՐ**

**2146**. Հետաքրքրական էր յատուկ և ընդարձակ ուսումնասիրութիւն մը ընել Պասմաճեանի ինքնագիր յիշատակարաններին և նամակներուն վրայ, և գրողին ներքին զգացմանց թափանցել, սակայն մեր մեղի սահմանած գիծերէն դուրս կը մնայ։ Բարգէն վարդապետ՝ այժմ եպիսկոպոս Կիւլէսէրեան, համառօտակի չօշափած է այդ կէտը, բնագիրները հրատարակած ատեն, և այն եզրակացութեան կը յանգի, թէ Պասմաճեան հոռոմեց չէր (ՊԱՍ. 135), և այդ կարծիքը կը քաղէ մանաւանդ այն բացատրութիւններէն, զորս նա գրուած է Ստեփաննոս Աւթանտիլեան վարդապետի հարցումներուն (ՊԱՍ. 123) Հայ եկեղեցւոյ մասին (ՊԱՍ. 126), և չէ համարձակած Հայ եկեղեցին դատապարտել (ՊԱՍ. 129)։ Իսկ Պասմաճեանի ձախողուածը կը վերագրէ Ուխտաւորաց Յարութեան համարձակ՝ Բոյլ և կատարելագէս Դերահաստան Յովհաննէսեանց, որով դժուարին կացութեան և կնճռոտ խնդիրներու դիմաց գտնուելով, չէ կրցած ոչ որոշ ուղղութիւն մը պահել, և ոչ Կոլոտի ու Նալեանի ճարտարութիւնը ցուցնել, մէկ կողմէն հաչտարար և միւս կողմէն հաստատամիտ ընթացք մը պահելով, կաթոլիկութեան անունով և Հռոմէններու ու Լատինամիտներու կողմէ յուզուած խնդիրներու մէջ (ՊԱՍ. 134)։ Պասմաճեանի գլխաւոր գրուածներն են մեծ Յիշատակարանը (ՊԱՍ. 9—56). որուն մէջ յառաջ կը բերէ իրեն նպաստաւոր քանի մը հին վկայագիրներ. և Ողջունագիր Էջմ. պատմութեան գրուածը (ՊԱՍ. 98-121), որուն լրացուցիչ կրնան սեպուիլ Աղբերցաբեան պատմութեան (ՊԱՍ. 95-97), և Աբրահամեան Յովսէփ մակագրուածները (ՊԱՍ. 93-94), որոնք 1789 մարտ 30 թուականը կը կրեն, իսկ առաջ յիշուած յիշատակարանն ու ողջունագիրը առանցմէ առաջ գրուած կ'երեւին։ Պասմաճեան ինքն ալ չուրանար, որ յամենայնի ամիրաներուն և գլխաւորապէս Գասպար Մուրատեանին կամակատար հպատակութիւն է ցոյց տուած, սակայն այսու ոչ թէ բան մը չահած է, այլ իւր տկար կողմերը ցուցադրած, և ի զուր հեգնական յանդիմանութիւններ կ'ուղղէ յառաջադէմ ամբոխէն և եղեռնոց ազգէն մերոյ (ՊԱՍ. 67-88), և դառն լեզուով կը վատաբանէ անոնց գործերուն դէմ։ Փոքրոգի զգացմանց արդիւնք են ամիրաներուն և ընդհանրապէս Հայերուն դէմ կազմած ամբաստանութիւնները, թէ Պօլիկեան աղանդաւորներ են, թէ Խաչի և պատկերի դէմ կը խօսին, թէ ճիւղահամարը խիստ կը գտնեն, թէ մատաղի ոսկրներու վրայ թաղման կարգ կը կատարեն, թէ եկեղեցականները կը կողոպտեն, թէ աղքատաց դրամները կ'իւրացնեն, թէ եկեղեցւոյ գործերուն կը խառնուին, թէ պատրիարքները կ'անարգեն, թէ եկեղեցպանութեամբ ամիրայ կը դառնան (ՊԱՍ. 136)։ Եթէ ըսածներէն ոմանց մասին իրականութիւնն ալ ընդունինք, ամէն ժամանակի սովորական անտեղութիւններ են, և անոնք ըլլալով հանդերձ պայծառացան և փայլեցան իւր անմիջական նախորդները, և օրհնութեամբ կըն-

քեցին կեանքերնին։ Աւելորդ կը սեպենք քաղել ուրիշներու դէմ ալ եղած հալածանքները, զորս իբր իրեն արդարացում յառաջ կը բերէ, կամ ուրիշ պատրիարքներու ամիրայից հանդէպ ցուցած զիջողութիւնները յիշել, որոնցմով իբր թէ ինքզինքը կը ջատագովէ. զի ասոնք իւր նպատակին չեն ծառայեր, և զինքն չեն արդարացներ, քանի որ հալածանք և պահանջմունք՝ ամէն բարձր աստիճանաւորներու բաժին են, իսկ արժանիքը՝ չընկճուելու մէջն է։ Այսու հանդերձ խստիւ պիտի չմեղադրենք Պասմաճեանի բնաւորութեան տէր մէկու մը գործած յեղումն, որ երկարամեայ ակամայ վտարանդութեան մէջ ձանձրացած, միտքին և խիղճին հակառակ ստորագրութիւն կեղծելու ստիպուած, և տարիներով կաթուածահար վիճակէ նեղուած, մասնաւոր գրութիւններով սրտին զեղումը դուրս կու տայ, և անով ինքն իրեն մխիթարութիւն պատրաստել կը կարծէ։

**2147** Պասմաճեանի և Սարաֆեանի, Բասէնցիի և Երզնկացիի, գլխաւոր դէմքերուն խնդութիւնը փոքրիշատէ պարզելէն ետքը, աւելորդ կը դատենք յառաջ բերել ուրիշ կաթոլիկութեան յարող Հայ եկեղեցականներու անունները։ Ապա թէ ոչ պէտք էր այդ միտքին ծառայող բոլոր Մխիթարեան և Անտոնեան միաբանները, և Փրոփականտայի աշակերտներն ալ յիշել, և կենսագրութեանց երկար շարք մը կազմել, զոր և ոչ Հայ եկեղեցւոյ աստիճանաւորներուն համար բրած ենք։ Ինչ որ պատմութեանս ընթացքին համար պէտք է գիտնալ, այդ միջոցին կաթոլիկութեան առաւել ընդարձակութիւն ստանալն է, օգտուելով Մխիթարեան կրկին և Անտոնեան միաբանութեանց գործունէութենէն, լատինամիտ հրատարակութեանց յաճախելէն, Եւրոպական ազդեցութեանց Օսմանեան քաղաքական շրջանակին մէջ տարածուելէն, և պապական նպաստներու ու արտաքին ակնկալութիւններու առատանալէն։ Այդ կացութենէն յառաջ եկող միջադէպներ հետզհետէ պատմութեան կարգին դիմացնիս պիտի ելլեն, և մենք ալ պէտք եղած ատեն պարտուպատշաճ բացատրութիւնները պիտի տանք, շարունակելով մեր սովորական ոճը։

ՋԱՆԱՋԱՆ ՀՌՈՄԷԱԿԱՆՔ

# Տ· ՂՈՒԿԱՍ Ա· ԿԱՐՆԵՑԻ / 1780 - 1799

**2148.** Սիմէոն Երեւանցի կաթողիկոսը 1780 յուլիս 26'ին կիրակի օր վախճանած, և յուլիս 27'ին երկուշաբթի թաղուած էր (§ 2139)։ Երեքշաբթի յուլիս 28'ին (ԴԻՒ. Դ. ՃԲ.), որ ըսել է յետ երից աւուրց (ՄՍՐ. 5), կամ մահուան երրորդ օրը, Մայրաթոռի մէջ ժողով գումարուեցաւ միաբանութեան անդամներով և յուղարկաւորութեան եկող Երեւանի և շրջակայից երեւելիներով (ԴԻՒ. Դ. ՃԲ.), նոր կաթողիկոսի ընտրութեան խնդիրը յուզելու։ Վերջին ատեններու ընկալեալ սովորութիւն էր, որ միաբանութիւնը երկու կամ երեք ընտրելիներ կը ցուցնէր, և յետոյ ազգին կարծիքը առնելու հետամուտ կ'ըլլար, գլխաւորապէս Երեւանի, Ջուղայի և Տփղիսի, և մանաւանդ Կ-Պոլսոյ ազգայիններուն, և այնպէս ընտրուածը կ'օծուէր և աթոռ կը բարձրանար (ԴԻՒ. Դ. ՃԳ.)։ Բայց մենք տեսանք որ պարագայից ստիպմամբ միաբանութենէ և մօտաւորներէ կատարուած հապճեպ ընտրութիւններ և օծումներ ալ տեղի ունեցած են, զորս ազգը համակերպութեամբ ընդունած էր։ Ըստ այսմ այս անգամ ալ խնդիրի նիւթ եղաւ, թէ պէտք է՞ արդեօք ընտրութիւնը շտապել և աւարտել։ Ընդհանուր կարծիքը այն եղաւ թէ ժամանակը վրդովեալ լինելով, ինչպէս որ Սիմէոնի վերջին օրերուն դէպքերն ալ կը ցուցնեն (§ 2138), և աթոռին անգլուխ մնալը վտանգաւոր նկատուելով՝ անհրաժեշտ է ընտրութիւնը փութացնել։ Այդ անհրաժեշտութիւնը ծանրացնող պարագաներ-

ԺԱՄԱՆԱԿԻՆ ՊԱՐԱԳԱՆԵՐ

*բուն կարգին նկատողութեան առնուեցաւ, որ Իսրայէլ Աղուանից վարիչ կաթողիկոսը (§ 2092), Տփղիսի մէջ Վրաց արքունիքը չահած էր, և Երեւանի յաղթութեամբ (§ 2138) անոր ստացած դիրքէն օգտուելով, արդէն Սիմէոնի հիւանդութեան օրերէն սկսած էր խլրտիլ։ Մահուանէ երկու շաբաթ ալ առաջ, Տփղիսի մէջ սուտ լուր տարածուելով, թէ հոգեւոր տէրն վախճանեցաւ, կաշառքներով և խարկանքներով չարժում գոյացուցած էր, որ Հերակլի ազդեցութեամբ Էջմիածինի աթոռը գրաւէ (ԴԻԻ. Դ. 32)։ Ուրիշ բանի և ինքնընծայ թեկնածումըն ալ կը ներկայանար Գալուստ Ներսէսեան եպիսկոպոս, որուն համար կ'ըսուէր թէ 300 Գօրչալուցի Թաթարներ վարձած է, եթէ պէտք ըլլայ, բռնութեամբ ալ աթոռին տիրանալու. և այս կասկածով տեղապահ և գանձապետ Մկրտիչ եպիսկոպոսի կարգադրութեամբ իբր 200 երիտասարդներ հաւաքուած էին վանքին մէջ, Գեղարքունի գաւառի զանազան գիւղերէն, հարկ եղած ատեն բռնութիւնը զօրութեամբ վանելու համար (ԴԻԻ. Դ. լդ.)։ Սիմէոնի հիւանդութեան օրեր, շրջակայ Թուրքեր ալ սկսած էին Էջմիածինի կալուածները խւրացնել, գեավուրի նշանաւոր յաջորդակցին, չերքեզ մեծամեծ այքէն խարայացին, ակամն և է մերձակայ քէօղլեանամուխ լինել, և շատ աւելի վնասներու սպառնալիքներ կ'ընէին (ԴԻԻ. Դ. 27), աթոռը անգլուխ տեսնելով։ Այս կասկածներէն աւելի միաբանութեան միտքին վրայ կ'ազդէր վախճանած և յարգուած կաթողիկոսին վերջին կամքը կամ կտակը, զոր քանիցս իւր կենդանութեան յայտնած էր, և վերջին անգամ ալ իւր խոստովանահօր՝ ծերունազարդ Մարկոս լուսարարապետ եպիսկոպոսին յանձնարարած էր, որ «Նորա անայցելու- ըստայ այս ըստաւոր ժամանակին», և շուտով կաթողիկոս ընտրեն Ղուկաս Կարնեցի եպիսկոպոսը (ԴԻԽ. Դ. լբ.)։ Ժողովին մեծամասնութեան միտքը հակած էր Ղուկասին, զոր Մայրաթոռի մէջ գործի վրայ ալ ճանաչած էին քանի տարիներէ ի վեր։ Բայց հակառակ կարծիք ունեցողներ ալ կային, որոնք կուսակից էին Կ-Պոլսոյ պատրիարք Զաքարիային, որ աւելի կարող և գործունեայ և երիցագոյն նկատուած էր, բայց աւելի շատեր կը խրտչէին անոր խիստ և բուռն բնաւորութենէն։ Զաքարիայի կողմը եղողներուն գլխաւորն էր Սահակ եպիսկոպոս Գեղամացի կոչուած հայրենական գաւառէն (ՄՍՐ.5), և Փառակեցի՝ ծննդավայրը եղող Փառականք գիւղին անունով (ԴԻԻ. Դ. լե.)։ Սա իւր միտքը յառաջ մղելու համար կը պնդէր, թէ անհրաժեշտ է Կ-Պոլսոյ ազգայիններու հաւանութեան դիմել, և առանց անոնց հաճութիւնը ստանալու ընտրութիւն չվերջացնել (ԴԻԻ. Ա. 3)։*

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԼՐՈՒՄԸ**

2149. *Խնդիրը այդ կէտին վրայ եղած ատեն, վիճաբանութիւնը սաստկացաւ մանաւանդ Մկրտիչ և Սահակ եպիսկոպոսներու միջեւ, և Սահակ սկսաւ Մկրտիչը նախատել թէ, Դուն նախ ես՛ պապ ընաշին տօ ուղղութեան։ Ժողովականներ Մկրտիչի կողմը ելան, որ չինքն յանկուցեալ տանէր զհամբաւոյն խորհրդակցութեանց, և Սահակի դէմ ելլալով սկսան հալածել զնա, զոր հազիւ Յովհաննէս Բէյալ մելիքը ձեռուընէրնէն ազատելով՝ դուրս հանեց, և տարաւ իւր սենեակը հանդարտեցնել և նստեցնել։ Հազիւ թէ միջադէպը փակուեցաւ, նոյնինքն Գալուստ եպիսկոպոս, որուն վրայ կասկածոտ էին, երկնային որ մի գուցէ իրեն դէմ ալ նմանօրինակ բան մը փորձուի, տեղէն կ'ելլէ, և է Բոյց տանել զնուրը իւր, կ'երթայ Ղուկասի աջը համբուրել ասելով. Կեցցէ տէր մեր օրհնեալն։ Ներկաներ համամիտ կերպով կը ձայնակցին, և համաձայն հաւանութեան ձեւով կը հռչակուի Ղուկասի ընտրութիւնը։ Ղազար Աստապատցի եպիսկոպոսը, անմիջապէս Սուրբ Խաչը կ'ըսէ, և ժողովին նախագահող Մկրտիչ եպիսկոպոսն ալ Պահպանիչ աղօթքը կ'արտասանէ, և ժողովը կը փակուի* (01 ԱՐՐ. 183)։ *Գալուստ եպիսկոպոսի նախաձեռնութիւնը կը քաղենք ժամանակակից յիշատակարանէն* (ԴԻԻ. Ա. 3), *և չեն արդարանար Մսերեանցի գրածները, թէպէտ ինքն կը պնդէ թէ գրեց՝ զոր հոգւոյ և լուսոյ և սրտաբերեցի է հիմնաւորութեան դիտաւորեց* (ՄՍՐ. 12), *իբր թէ Սահակ եղած ըլլայ առաջին անգամ Ղուկասի համար մտածողը* (ՄՍՐ. 5), *և ժողովին մէջ Ղուկասին անունը հռչակողը* (ՄՍՐ. 6)։ *Կ'երեւի թէ Մսերեանց մոռացկոտ կամ կողմ-*

նակցական աղբիւրներու հանդիպած է, զի տեսանք Սահակի ժողովէ հեռացուիլը. և վերջէն Սահակ ինքն ալ խոստովանած է Ղուկասի դէմ եղած ըլլալը (Դիւ. Դ. 193)։ Նոյն ժողովին մէջ որոշում տրուեցաւ ընտրութիւնը անմիջապէս լրացնել և Ղուկասը աթոռ բարձրացնել. ուստի հապճեպով պատրաստութիւններ կը տեսնուին օծումն ալ կատարելու։ Ղուկաս բաւական կ՚ընդդիմանայ, թէ վրդովեալ ժամանակին դժուարութիւններէն խոյս տալով, և թէ ներքին տարաձայնութիւններէն խիթալով. բայց ամէնքը միաբերան անհրաժեշտ պարագաներուն պահանջը առջեւ կը դնեն և զիջողութեան կը ստիպեն (Դիւ. Դ. 28)։ Վարդավառի դիմացի կիրակէն, 1780 օգոստոս 2'ին, օծման կարգը կը կատարուի, և Ղուկաս կաթողիկոսական աթոռ՝ կը բազմի, Սիմէոնի մահուան ութերորդ օրը, և անմիջապէս կը սկսի աթոռին պաշտպանութիւնը հոգալ, զանազան կողմեր դրկուելիք շրջաբերականները պատրաստել, և զանոնք տանող պատուիրակները, կամ ժամանակին բառով՝ Մահօխօրդաց վարդապետները ճամբայ հանել։

**2150.** Գործողութեանց մէջ չյառաջացած պէտք է ակնարկ մը նետենք Ղուկասի նախընթացին վրայ։

**ՂՈՒԿԱՍԻ ՆԱԽԸՆԹԱՑԸ**

Ղուկաս ծնած կ՚ըլլայ 1722'ին, եթէ 77 տարեկան վախճանեցաւ 1799'ին (Դիւ. Ա. 45)։ Ըստ այսմ երբ 1783 ապրիլ 4'ին կը գրէ, թէ 36 տարի առաջ Քիւթիւրի ժամանակ տէր եղի գեղոյ էր, պէտք չէ տղայական տարիքի վրայ առնել, զի արդէն 26 տարեկան եղած կ՚ըլլայ, այլ պաշտօնական շրջանակէ դուրս և գործերու անհաղորդ ըլլալուն վրայ, ինչպէս ինքն ալ կ՚ակնարկէ ըսելով, թէ այն ատեն Զինչ՞ ես խորհրդակից էի աշխարհականաց էրոյ (Դիւ. Դ. 507)։ Ղուկաս Կարնեցի կոչուած է սովորաբար, ոչ քաղաքաւ, այլ գեղացի (Դիւ. Դ. կ.), զի ծննդավայրն եղած է Կեղի կամ Քղի աւանը որ է հին Խորձեանը։ Մանկութենէ աշակերտած է Մայրաթոռին, և Սիմէոնէ առած է ուսմանց դասեր, իսկ քահանայական ձեռնադրութիւնը ընդունած է 1751'ին լուսաւորապետ Եղիազար եպիսկոպոսէն, ծակից ունենալով Զաքարիա Կաղզուանցին։ Վարդապետութեան ատեն նուիրակ գացած է Ռումէլի և Ղրիմ։ Սիմէոն կաթողիկոս իւր օծուելէն միայն 58 օր ետքը, 1763 յունիս 17'ին, երեքշաբթի, Որդւոց և Թոռանց տօնին օրը (Դիւ. Դ. էե.), հին տօնացոյցի կարգով (ՏՆԱ. 228), եպիսկոպոսութեան օծում տուած է Ղուկասի և Եսայի Նախիջեւանցի և Պետրոս Բերթումեան վարդապետներու, բայց Ղուկաս նկատուած է անդրանիկ և շնորհածին զաւակ Սիմէոնի, որ քիչ ետքը զայն վանքէ դուրս պաշտօնի կոչեց, և 1764 մարտ 11'ին յղեց Զմիւռնիոյ առաջնորդութեան և նուիրակութեան (Դիւ. Գ. 101)։ Ղուկաս այնտեղ մնաց մինչեւ 1775, զի մէկ կողմանէ շատ օգտակար կ՚ըլլար զանազան յանձնակատարութեանց, և մանաւանդ տպարանի ձեռնարկին համար, և միւս կողմէն Զմիւռնացիք կը թախանձէին որ չփոխէ, և նոյն իսկ 1775'ին երբոր զայն Մայրաթոռ կը կոչէր՝ նոյն իսկ Ղուկասի խնդրանաց համեմատ, Զմիւռնացիք խնդրագիրներ կը տեղացնէին, որ զմեր զՅակոբոս վարդապետն Պօլսեցոյն բաշխեցէք, զՂուկաս վարդապետն ետ մեզ բաշխեա (Դիւ. Ը. 426). բայց Սիմէոն վեհն՝ բացասաց զխնդիրս նոցին (Դիւ. Ը. 440), զի թէ ինքն կ՚ուզէր զայն իրեն մօտ ունենալ, և թէ Ղուկաս կեցին անձամբ աղաչանօք դիմեալ եւ օրհնութեամբ վեհին խնդրեալ զնոսին (Դիւ. Ը. 452)։ Այս պատճառով վերջապէս Եսայի վարդապետ յաջորդ նշանակուեցաւ, և 1775 յունիս 23'ին ճամբայ ելաւ (Դիւ. Ը. 456). իսկ Ղուկաս հազիւ տարւոյն վերջերը կրնայ Մայրաթոռ դարձած ըլլալ։ Անկէ ետքը չարունակ՝ Էջմիածին մնաց, իբրեւ գլխաւոր գործակից և խորհրդական Սիմէոնի, որուն հիւանդագին վիճակը օրէ օր կը ծանրանար, և հաւատարիմ և կարող գործակցի մը պէտք ունէր, որպիսի ոք ճանչցած և ընդունած էր նա իւր անդրանիկ և շնորհածին Ղուկասը։ Սիմէոնի այդ մեծ գնահատումը հիմնական երաշխաւորութիւն մըն է Ղուկասի արժանիքին, հակառակ իւր մասին ոմանց կողմէ կուտակուած ձախող դիտողութեանց (ՄՍՐ. 10)։ Նախընթաց գործունէութիւնը վկայուած է այս կերպով. իսկ կաթողիկոսական գործունէութեան մասին կը թողունք որ եղելութիւնները խօ-

*սին։ Ղուկաս կը ներկայացուի իբրեւ* այր անձեայ, [illegible], վայելչադէմ, ծանրաբարոյ, խաղաղ է կենակցութեան, և վարժ է [illegible], *որ համակիր չեղողի մը գրիչին ներքեւ* (ՄՄՐ. 10) *աւելի մեծ նշանակութիւն կը ստանայ։ Ուսումնական զարգացման կողմէն ալ յետամնաց պէտք չէ կարծուի, քանի որ Սիմէոնի յառաջադէմ աշակերտներէն էր, և հնար չէ զինքն անուսումն կամ ուսումնատեաց ըսել, պարզապէս ըստ ըլլալուն համար.* Մեծ է փառօք այս, ինչ [illegible] ես ի [illegible], [illegible] եթէ զՍուրբ ես տէր և [illegible] [illegible] [illegible] ինչ [illegible], ես [illegible] [illegible] [illegible] (ՄՄՐ. 12)։ *Այդ խօսքերը պարզապէս աթոռին չինութեան և պահպանութեան նախանձաւոր ըլլալուն վկայութիւնն են, և գրեթէ կրկնութիւն են Սիմէոնի խօսքերուն թէ,* Լաւ է ինձ՝ որ ընդ հաւատոյն ուղիղ էցէ և ընդ վարուցն դարձեալ, քան զի [illegible] անարգոյն՝ որ ընդ հաւատոյն թերի էցէ և ընդ վարուցն անդորրեցէ (ԴԻԻ. Դ. 754)։ *Սիմէոնի մասին կասկածող չկայ, նոյն է Ղուկասի ալ միտքը, և երկուքն ալ կ'ակնարկեն լատինամոլ ուսումներով ազգային եկեղեցին անարգող թեթեւամիտներուն։*

**2151.** *Ղուկասի ընտրութիւնը ծանուցանող պաշտօնագիրներուն կարգին, յատուկ մտադրութիւն դարձուեցաւ Կ-Պոլիս ղրկուելիքին, վասն զի որչափ ալ Մայրաթոռը Պարսից իշխանութեան ներքեւ էր, բայց սովորութեամբ պահանջ դարձած էր որ Օսմանեան կառավարութեան կողմանէ ալ հրովարտակ ստացուի, որպէս զի անով կաթողիկոսը կարենայ իշխանութիւն վարել Տաճկահպատակ վիճակներուն վրայ։ Օծումէն* յետ [illegible] [illegible] (ԴԻԻ. Ա. 3), *որ է ըսել Վեռափոխման տօնը ընելէն ետքը, որ այն տարի օգոստոս 17'ին կը հանդիպէր, ճանպայ ելաւ Կ-Պոլսոյ պաշտօնագիրը տանելու սահմանուած Պետրոս եպիսկոպոս Խօզաբաճեան, որ Սէթ ալ կոչուած է, գուցէ աւազանի անունը ըլլալուն. սակայն նա Կ-Պոլիս չհասած, լուրը եկած էր, որ իբր անակնկալ գոյժ և անհաճոյ գործ ամէնուն ուշադրութիւնն իրեն գրաւեց (§ 2137)։ Կ-Պոլսեցիք վշտացան որ կաթողիկոսական ընտրութեան մէջ իրենց ձայնը կ'անարգուէր, և ճանչցուած իրաւունքնին ոտնակոխ կ'ըլլար.* ուստի [illegible] [illegible] [illegible], *և խորհեցան եղելութեան ընդդիմանալ։ Բայց ազգայիններէն աւելի էր Զաքարիայի զայրոյթը, ոչ թէ լոկ իւր աթոռին պատիւը պաշտպանելու տեսակէտէն, այլ աւելի իւր անձնական զգացումին վիրաւորուելուն համար, որովհետեւ իրեն իրաւունքը կը կարծէր կաթողիկոսական աթոռին յաջորդութիւնը. և զինքն Ղուկասէ և բոլոր Մայրաթոռոյ եպիսկոպոսներէն վեր կը դասէր արդիւնաւորութեամբ և արժանաւորութեամբ։ Զաքարիայի զայրոյթը եւս առաւել սաստկացաւ, երբ ձեռքը հասան Սահակ Փառակեցիի գիրերը, որ ընտրական ժողովին միջադէպէն* (§ 2149) [illegible] և [illegible], *Զաքարիայի գրգռիչ տեղեկութիւններ էր հաղորդած, անոր ընտրութեան հաւանականութիւնը ցուցնելով և դիմադիրներ մասնանիշ ընելով, ինչպէս ինքն ալ վերջէն կը խոստովանէր,* թէ [illegible] [illegible] [illegible] ի [illegible] Պոլիս, *և թէ* [illegible] զոր ինչ և կամեցայ (ԴԻԻ. Դ. 193)։ *Զաքարիա Ործաօրծաց ժողով գումարեց, եղելութեան մասին խօսեցաւ ինչպէս որ իւր վիրաւորեալ անձնասիրութիւնը կը թելադրէր. և ամէնքը գրգռեց։ Խօզաբաճեանի տուած բացատրութիւնները նկատի չառնուեցան, և որոշում տրուեցաւ եղած ընտրութիւնը չճանչնալ, նորընտիր կաթողիկոսին յիշատակութիւնը չընել, և կառավարութենէ հաստատութեան հրովարտակ չառնել։ Միանգամայն կաթողիկոսական ընտրութեան և ազդեցութեան խնդիրները հաստատուն ձեւի մը վերածելու համար, չորս կէտեր սահմանեցին և միաբանութեան կողմէն ընդունուիլը պահանջեցին, և յատուկ պատուիրակ մըն ալ որոշեցին Կարապետ Ամդեցի՝ Տիգրանակերտի եպիսկոպոսը, որ Էջմիածին երթալով առաջարկները ընդունիլ և Ղուկասի ընտրութիւնը ջնջել տայ։ Չորս առաջարկներու պաշտօնագիրը չունինք, որ աւելի մանրամասնօրէն ուսումնասիրէինք։ Անոնք համառօտակի միայն նշանակուած կը գտնենք. 1. Լուսահոգւոյն փոքրաւորները* [illegible] [illegible], *2. Վասն*

ընտրութեան կաթողիկոսի, 3. վասն կացուցանելոյ խորհրդականս, 4. վասն հասս լինելոյ հաշուոյն որբոյ աթոռոյն և պատուէր տալոյ նուիրակաց (Դիւ. Դ. 194)։ Այդ չորս առաջադրեալ պայմաններէն առաջին կէտը պարզ անձնական վրէժխնդրութեան հետեւանք էր, զի Զաքարիային գրուած էր, թէ Ներսէսեաններ ընտրեցին զՂուկասն և ետ մերժեցին (Դիւ. Դ. ԼԷ.)։ Միւս երեք գլուխներով կը պահանջուէր որ առանց Կ-Պոլսոյ ազգայնոց հաւանութեան կաթողիկոս չնստի, կաթողիկոսին չուրջը որոշուած խորհրդականներ ըլլան և անոնց հաւանութեամբ գործէ, Մայրաթոռոյ հաշիւները Կ-Պոլսեցւոց հաւանութեան ենթարկուին, և Մայրաթոռոյ նուիրակները պատրիարքէ ստանան հրամաններն ու հրահանգները։ Մինչեւ որ պատգամաւորութեան արդիւնքը իմացուէր, որոշուեցաւ այդ ընդդիմադիր կացութիւնը շարունակել։

**2152**. Կարապետ եպիսկոպոսին էջմիածին համնելուն ճիշդ օրը չունինք, միայն կը գտնենք թէ պատուիրակին համնելէն ու երկերեանքամ ժողով գումարուելէն, և բանակցութիւններ լրանալէն ետքը, 1781 տարւոյ ի մարտի ԻԸ Մայրաթոռոյ միաբանից պատասխանը գըրուած և ղրկուած է Կ-Պոլիս (Դիւ. Դ. 196)։

ՂՈՒԿԱՍԻ ՔԱՇՈՒԻԼԸ

Ղուկաս հազիւ թէ պաշտօնապէս ստացաւ Կ-Պոլսեցւոց տժգոհութեան և դիմադրութեան գիրը, ու լսեց Կարապետ Ամդեցիի բերանացի տեղեկութիւնները, իսկոյն որոշեց իւր անձը չեզոքացնել, և կաթողիկոսական արտաքին ձեւակերպութիւններէ ձեռք քաշել։ Եթէ վճռապէս հրաժարելով կաթողիկոսի անունն ու գործունէութիւնն ալ չմերկացաւ, պարզապէս աթոռը անիշխանութեան և կացութիւնը անտէրնջութեան չմատնելու համար էր, այն ալ թախանձանօք միաբանութեան, ապա թէ ոչ նա կաթողիկոսարանէ ալ ելլելու և միաբանութեան կարգը իւր սենեակը դառնալու կամք յայտնած էր։ Նա համարձակ յայտարարեց թէ. Ես ոչ եմ կաթողիկոս, այլ նոյն Ղուկաս եպիսկոպոսն եմ, որպէս էի յառաջ։ Երթայք առէք միաբանութեամբ խորհեցարուք զօգուտն որբոյ աթոռոյս, և զոր ինչ դուք ամենեքեան զօգուտ տեսանիցէք, ինձ ևս հաճելի և ընդունելի է։ Եթէ կամիցէք ընտրել զայլ ոք յաղագս այսր աստիճանի, գրեցէք միաբանութեամբ և ընտրեցէք, ես ևս կնքեցից զթուղթն (Դիւ. Դ. 192)։ Այլեւս հայրապետական աթոռի չիր նստեցաւ, և պաշտօնական գահին քովը յահեակ կողման (Դիւ. Ա. 4), ըստ այլոց յաջմէ կողմանէ (ՄՍՐ. 8), փոքր աթոռ մը դնել տալով, հոն կը կենար, որ հասարակօրէն կանգնի տեղապահ աթոռոյն (Դիւ. Ա. 4)։ Որովհետեւ մեղադրած էին, թէ ընդէր է եդեալ զկարմիր կնիքն ի ճակատն թղթոյն (Դիւ. Դ. 194), զանց ըրաւ կարմիր կնիք գործածել, ըսելով թէ որքան զգուշացեալ էաք յայդր բանն մեր և ի յաւէն ընթանայ, անպատեհ է մեզ և դաւաճանութեան մեծ՝ այլեւս կարմիր կնքով կնքել (Դիւ. Դ. 196)։ Եպիսկոպոսական ձեռնադրութիւն դեռ չէր ըրած, այնուհետեւ ալ զգուշացաւ ընելէն, և մինչեւ իսկ կարգադրեց ամէն վիճակներում յիշել Սիմէոնի հանգուցեալ կաթողիկոսի անունը (Դիւ. Դ. ԼԲ.)։ Ղուկասի կողմէ առնուած այդ քայլերը՝ հեզահոգի առաքինութեան և խաղաղասէր խոնարհամտութեան արդիւնք էին, որոնք ստուգիւ գովութեամբ պէտք է յիշատակուին։ Մինչեւ իսկ, եթէ հակակիրներու խօսքին համեմատ, այդպէսէ էր ի վեր արկ հնար, որպէսզի կարենայ զանել զիրս Զաքարիայ կամ զեղծացանել զգործածս նորա (ՄՍՐ. 8), դարձեալ բարեմիտ հոգւոյ և ընտիր բնաւորութեան հետեւանք էր, եթէ ուզեց թաքուն յաղթել զորն (ՀՈՄ. ԺԲ. 21), և չուզեց ձեռք անցուցած հայրապետական իշխանութեամբը ճոխանալ և բռնադատիչ միջոցներու դիմել։

**2153**. Երբոր Ղուկաս անձնապէս ձեռընթափ եղաւ՝ Կ-Պոլսեցւոց կամ լաւ եւս Զաքարիայի յուզած խընդիրներուն համար, միաբանութիւնը յառաջ անցաւ խնդիրներն ստանձնել, և աթոռին իրաւունքները պաշտպանել, և ճշմարիտ պարագաներու հանդէպ կատարած գործողութիւնը ջատագովել։

ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԴԵՐԸ

Պատուիրակ Կարապետ Ամդեցիին ներկայութեան համաբերան պատասխանեցին, թէ այնպէս միանգամ ընտրել և կացուցեալ եմք Ղուկասը, նոյնպէս և այժմ ընդունիմք, և ոչ է ի մեզ այլ և այլ բան կամ պատասխանի (Դիւ. Դ. 193)։ Ընտրութեան մասին այսպէս կտրուկ կեր-

պով պատասխանելէ ետքը, կ'անցնին Կ-Պոլսեցւոց առաջարկած չորս կանոններուն։ Առաջինին դիմաց տեղի կու տան, և Սիմէոնի ժամանակէն կաթողիկոսական յարկաբաժինի կամ վեհարանի մէջ եղող և Ներսէսեաններ կոչուածներ, յօժարակամ դուրս կ'ելլեն, անձնական խնդիր մղած չըլլալու համար։ Իբր թէ այս կերպով Ղուկասի մօտէն հակառակութիւններ հեռացած պիտի ըլլան. զի Զաքարիայի միտքին մէջ Սիմէոնի դէմ ալ բուռն հակառակութիւն մը գոյացած էր, Ղուկասի ընտրութեան անոր կամքին և կտակին արդիւնքը եղած ըլլալուն։ Իսկ միւս երեք կէտերուն միաբանութիւնը կ'ընդդիմանայ, խնդիրը օրինական ձեւի վերածելով։ Իբրեւ սկզբունք կը հռչակեն, թէ Կանոնադիրք սրբոյ առաքելոյ հայրապետք լինին և ոչ միաբանք. ամէն կանոն հայրապետս մեր պարտի վերահաստատել իւրով կոնդակաւ և կարմիր կնքով, անկէ ետքը, կ'ըսեն, և մեք զկանոնսն կնքեսցուք, որով եթէ այս կանոնք առանց հայրապետական կնքոյ լինիցին, է հարկէ անվաւեր լինին։ Այս սկզբունքի հիմնուելով կը հետեւցնեն, որ եթէ Կ-Պոլսեցիք Ղուկասի ընտրութիւնը չեն ընդունիր, անոր զօրհնութեան թուղթն ընթեռնուլ, զանունն յիշել, և կաթողիկոս անուան եւս արժանի լսանելոյ ընթերցուած չեր գրեն, և զկարմիր կնիքն մերժերէն, ինչպէ՞ս կը պահանջեն որ կաթողիկոսական աթոռէն կանոններ հաստատուին։ Եւ կ'եզրակացնեն թէ այս անհեթեթ էած է. թող միաբանեսցին ընդ իւրեանց, և կացութիւնը պարզեն. յիշելով զանուն կաթողիկոսին, և զֆերման և զմահուրն մեր հոգացեալ առ յղեսցեն, այլ և առացեալ կանոնքն հանդերձ այլեւս կանոնօք գրեսցին կոնդակաւ և կնքով (Դիւ. Դ 194)։ Այդ տեսութիւնները միաբանութիւնը յատուկ պաշտօնագիրի վերածելով՝ Կ-Պոլիս ղրկուելու համար ճանպայ կը հանեն 1781 է մարտ ետ, և հաւանաբար Կարապետ Ամդեցին ալ կը մեկնի Կ-Պոլիս դառնալու, և բերանացի բացատրութիւններ տալու։ Միաբանական գիրը կը ղրկուի Կ-Պոլիս գտնուող Պետրոս եպիսկոպոսին, և Կ-Պոլսոյ քաղաքին նոր նուիրակ Մինաս եպիսկոպոսին, և Կ-Պոլսոյ վիճակաց նուիրակ Գալուստ եպիսկոպոսին, որպէսզի բստ այնմ աշխատին Կ-Պոլսոյ պատրիարքին և մեծամեծաց հետ գործերը կարգադրել։ Սակայն դժբախտաբար վերաբերեալ թուղթքն է յետ առաքելոյ եկն անկեալ է ճանապարհին յայնկոյս Կարնոյ, և մայիս 2'ին դեռ Կ-Պոլիս բան մը ստացուած չէր, և հարցում ուղղած էին Էջմիածին, և անկէ ետքը նոյն գիրերը նորոգեալ գրեալ ղրկուեցան (Դիւ. Դ. 197), որով շատ ուշ ստացուեցաւ Կ-Պոլսոյ մէջ Մայրաթոռոյ միաբանութեան պատասխանը։ Այդ առթիւ շատ մը մասնաւոր գիրեր ալ ղրկուեցան Կ-Պոլիս միտքերը շինելու, որոց մէջ նշանաւոր է նոյն իսկ Ղուկասու կողմէ 1780 սեպտեմբեր 7 թուականով (Դիւ. Դ. 30) սեղանաւորներու պետ Պալքափանցի Ցարութիւն ամիրայի ուղղուած գիրը (Դիւ. Դ. 24), որ շատ ուշ և միաբանական գործողութիւնէն ետքը ճանպայ հանուած է, ինչպէս յաւելուած ծանօթութենէն կը քաղուի (Դիւ. Դ. 30)։ Կը յիշուի եւս թէ Ղուկաս՝ Զաքարիայի ալ գրած ըլլայ, թէ է հարկէ ժամանակիս վիճակեցոյ ես յայս պաշտօն, այլ գիտեմ արժանաւորագունէք զան զիս տեղի տալ, մինչ թէ համբեսցիս գալ այսր և զծանրութեան զայս յանձն առնուլ զլուծ (ՄՍՐ. 8)։ Ամէն առթի մէջ Զաքարիա պատրիարքութեանը առեն այդ գիրը առած չէ։

**ՏԱՃԿԱՀԱՅՈՑ ԿԱՐԾԻՔՆԵՐԸ**

2154. Երբոր Զաքարիայի ազդեցութեամբ Կ-Պոլսոյ մէջ Ղուկասի ընտրութեան դէմ որոշումներ կը տրուէին (§ 2151), արդէն մեծամեծներէն մաս մը կար, որ սրտով կամակից չէր, և այդ խումբին ոյժ կու տային կաթողիկոսամիտներն ալ, որոնք Զաքարիայի համակիր չէին կրնար ըլլալ, անոր վերջին ձեռնարկներուն պատճառով (§ 2130)։ Էջմիածինէ եկող նուիրակ և պատգամաւոր եպիսկոպոսներն ալ համոզիչ բացատրութիւններով, վիջողութեան կողմ եղողներուն թիւը օրըստօրէ կը շատցնէին, բայց շատ աւելի մեծ ազդեցութիւն գործեց Ղուկասի բռնած խոհեմ և հեզ ընթացքին լուրը, և Կ-Պոլսեցւոց դիմադրութեան առջեւ խոնարհելով, կաթողիկոսական ձեւերէն հրաժարիլը։ Ըստ այսմ թէպէտ կազմուած էր մեծամեծներու նշանաւոր թիւ մը, որ զեղջանելին առնել զխաղաղութեան, սակայն Զաքարիա անողոքելի էր, և կամք պատրիարքին և վարդապետաց որոց նորա՝ Հայր անխոնարհելի, մա-

նաւանդ որ նա զօրաւոր էր իր դիրքին մէջ, և մեծամեծներն ալ չկարողանային ասել ինչ ես կամ ունէի ընդդէմ Նորին կամաց (Դիւ. Ա. 5)։ Այսպէս տարտամ վիճակ մը կը տիրէր Կ-Պոլսոյ մէջ, և Ղուկասի կաթողիկոսութիւնն ալ առկախ ձեւ մը ունէր, ոչ ընդունուած էր, և ոչ ալ բացարձակ մերժումով նոր ընտրութեան ձեռնարկութիւն կար։ Միեւնոյն առկախ վիճակը Էջմիածնի մէջ ալ կը տիրէր։ Ղուկաս կաթողիկոս էր, Մայրաթոռոյ վարչութիւնը ձեռք առած էր, պէտք եղած գործերը պաշտօնապէս կը կատարէր, բայց կաթողիկոսութեան արտաքին ձեւերը չէր գործածեր, ինչպէս բացատրեցինք (§ 2152). աւելի տեղապահի, քան թէ բուն կաթողիկոսի դիրքը կը պահէր։ Այդ կացութիւնը երկկողմանի կը շարունակէր 1781 գարնան միջոցին, երբ անակնկալ միջադէպ մը, այսինքն Զաքարիայի պատրիարքութենէն ելլելը, կացութիւնը այլափոխեց։

**ԱՆԿԻՒՐԻՈՅ ԿԱԹՈԼԻԿՆԵՐԸ**

2155. Պատմեցինք իր կարգին թէ Զիլիֆտար Մէհմէտ եպարքոսին օրով, Զաքարիա ստիպուած էր կաթոլիկներու հանդէպ ունեցած ընթացքը մեղմացընել (§ 2136)։ Արդէն կաթողիկոսական խնդիրն ալ ամբողջովին գրաւած էր անոր մտադրութիւնը։ Այդ պատճառներով կաթողիկոսական խնդիրը թուլցեր էր, և ոչ ևս յանդգնել հերձուածոյն, ո՛չ միայն Կ-Պոլսոյ մէջ խռովել՝ այլ մանաւանդ Անկիւրիոյ մէջ տեղական իշխանութիւնները շահելով չորս եկեղեցիներ գրաւել, և ըստ սովորականաց իւրեանց կատարել չարիս և գայթակղութիւնս (Դիւ. Ժ. 266)։ Գործը ակնյայտնի կերպով պատրիարքական իշխանութեան հակառակ ըլլալով, ժողով մը գումարեց Զաքարիա, և ժողովական որոշմամբ կառավարութեան դիմեց, և Զիլիֆտար եպարքոսն ալ ստիպուեցաւ հրովարտակ մը հանել տալ չորս եկեղեցիները ետ դարձնելու, հետեւայներն ալ պատժելու հրամանով։ Զաքարիա հրովարտակը ստանալով անմիջապէս բուռն գործադրութիւն չուզեց ընել, այլ առաջնորդ Ստեփաննոս վարդապետին գրեց, որ ծանուցանէ հրամանը եւ հպատակելու հրաւիրէ հետեւայները։ Անոնք չհամակերպեցան, զի տեղական իշխանութիւնները շահած էին։ Նոյն օրեր Ստեփաննոս վարդապետի մահուան վրայ, Աբրահամ վարդապետ ղրկուեցաւ նման հրահանգով, բայց անոր ալ չյանսալնուն, հարկ եղաւ հրովարտակի գործադրութիւնը պահանջել պետական զօրութեամբ, և այս նպատակով Անկիւրիա ղրկուեցաւ Պօղոս վարդապետ Պանտըրմայի առաջնորդը, իբրեւ կարողագոյն անձ մը։ Այդ միջոցին Զիլիֆտար կը մեռնէր 1781 փետրուար 8'ին, և իշխանութիւնը տեղակալութեամբ կ'անցնէր Քարաւտան Հասան փաշային, զի եպարքոս անուանուող Իզզէթ Մէհմէտ փաշա Կարին կը գտնուէր, և մինչեւ անոր հասնիլը տեղակալութեան պէտք զգացուած էր։ Պօղոս վարդապետ գլխաւոր հետեւայներէն չորս հոգի աքսորել կուտայ Սամսոն, որք են Եսայի Փէշտիմալճի օղլու, Պետրոս Զըպճըօղլու, Յովհաննէս Եուսուֆօղլու, և բժիշկ Պետրոս Քէօթահեացի. բայց եկեղեցիներու խնդիրը տակաւին առկախ կը մնար, և որ եւս է, Պօղոսի դէմ դաւաճանութեան լուրեր ալ կը լսուէին։ Պօղոս լուր կու տայ պատրիարքին, սա ալ կրկին ազգային ժողով կը գումարէ, և կ'որոշուի նոր դիմում ընել փոխ-եպարքոսին Անկիւրիոյ եկեղեցիներու մասին հրովարտակը գործադրելու, և միանգամայն տասուերկու հոգիներու անունները կու տան Անկիւրիայէ հեռացուելու համար։ Ասոնք են. Մաղաքիա Էմիրզէօղլու, Անտոն Ճանէզօղլու, Պօղոս Տատվէրէնօղլու, Պետրոս Ուզունօղլու, Հայրապետ Տիւրկէրօղլու, Յովհաննէս Ինճէօղլու, Միքայէլ Զուռնաճիօղլու, Մաղաքիա Սամուէլօղլու, Հերոնիմոս Ճգնաւորօղլու, Յակոբ Սրվաճիօղլու, Յովհաննէս Գըլճըօղլու, և Յովհաննէս Եուսուֆ օղլու, վերոյիշեալ համանունէն տարբեր՝ անոր մէկ ազգականը։ Միեւնոյն առթիւ մայրաքաղաք գտնուողներէն ալ հեռացուելու համար քանի մը անուններ կը տրուին, որոնք են. Յարութիւն Ճանպազօղլու, Յովսէփ Թիւլպէնտճի, Քերոբէ Գույումճու, Յովհաննէս Սահաթճի, Սերոբէ Օթուրաքճի, Վարդան Մանկավարժ, Լօրենցիոս Գափամաճի, և Մինաս Կոյր մականուանեալ։ Ասոնց գործադրութիւնը կ'ըլլայ 1781 մարտին, վերջինները Թիարան կը բանտարկուին, առաջինները Ամասիա կ'աքսորուին,

*իսկ եկեղեցիներու խնդիրը, փոխ-եպարքոսը եպարքոսին կը թողու, որուն գալը մօտալուտ էր* (Դիւ. ժ. 267-278), *ինչպէս որ ալ կը հասնի ապրիլ 5'ին* (ՍՐԳ.)։

**2156.** *Եպարքոս Իզզէթ Մէհմէտ փաշա իր պաշտօնավարութեանը ձեռնարկեց պատրիարքարանին պաշտպանութեամբ։ Անտեղի վարմունքի մէջ գտնուողներէն երեք հոգի եւս բանտարկեց, որոնք են Գէորգ և Աբիկ Սանտալճի եղբարք և Յեվհաննէս Մինթանճի։ Բանտարկեալներուն ազատութեանը համար իրեն դիմող կիներուն լեզուագարութեանը համար, անոնցմէ ալ չորս հատը բանտարկեց, թէպէտ լիառոյ տուգանքով արձակեց։ Իսկ Անկիւրիոյ եկեղեցիներու գործն ալ նկատի առնելով որոշեց յատուկ պաշտօնեայ ղրկել հրովարտակին գործադրութեան համար, և այդ պաշտօնին որոշուեցաւ Քաբուճուպաշը Ուզուն Մէհմէտ, որ ունէր ընդ իւր վաճառան ընկերութեան* (Դիւ. ժ. 281-283)։ *Այդ որոշումները եւսքանզեւս գրգռեցին կաթոլիկութեան յարողները, որոնք Եւրոպական դեսպաններու դիմելով Զաքարիայի տապալումը իբրեւ միակ միջոց ցուցուցին, և իրենք ալ այդ նպատակով ճիգերու ձեռք զարկին։ Քաբուճուպաշը Մէհմէտ դեռ ճամբայ չելած կը լսէ, որ Ամասիա աքսորուածներէն Յովհաննէս Գրլճըօղլու դաղտնաբար եկած է, ուստի իւր պաշտօնէից ձեռքով բռնել ու բանտարկել կու տայ։ Ասոր վրայ կաթոլիկներուն մէջէն Էսմա սուլտանուհւոյն ապարանքին հետ յարաբերութիւն ունեցողներ, անոր պաշտօնեաներէն գիր մը կ'առնեն, իբր թէ Էսմա սուլտանուհիէն գրուած, և վերոյիշեալ Մէհմէտի ուղղուած, որ Գրլճըօղլուն թողու, զի իւր մարդն է. բայց Մէհմէտ կասկածելուն, ճարտար կերպով կը ստուգէ թէ սուլտանուհին անգիտակ է, ուստի գործը եպարքոսին կը հաղորդէ, և ոչ միայն Գրլճըօղլուն չթողուիր, այլ և եպարքոսը խարդաւանանքին վրայ զայրանալով աւելի խիստ հրահանգներ կու տայ Մէհմէտի։ Ասոր վրայ Մէհմէտ ճամբայ ելլալու համար 1781 մայիս 7 ուրբաթ օր Իւսկիւտար կ'անցնի։ Հոն իրեն կարաւանին հետ ճամբորդելու եկած կասկածաւոր մէկը կը տեսնէ, և կը հարցաքննէ, և անոր չփոթ պատասխաններուն վրայ խուզարկել կու տայ, և վրան չատ մը նամակներ կը գտնուին, մինչ սուրհանդակ ըլլալը ուրացած էր։ Նամակները եւրոպական լեզուով հասցէ ունէին, և մարդը կը խոստովանի թէ Անկիւրացի կաթոլիկներու կեդրոնն եղող Սօֆճի խան չուկային դռնապանն ու բեռնակիրը այդ գիրերը իրեն յանձնեցին Անկիւրիա տանելու համար։ Այդ խօսքերը Մէհմէտի կասկածը կը չատցընեն, եւրոպական լեզուի հմուտ մէկը գտնել տալով մէկ հատը միայն բանալ և կարդալ կու տայ, և վերջէն բոլոր նամակները ու կասկածոտ մարդը, սեղանաւոր Միքայէլ ամիրային ձեռքով Զաքարիա պատրիարքին կը ղրկէ, որ նայի և գիտցածին պէս տնօրինէ։ Միքայէլ Կ-Պոլիս անցնելով իւր սպասաւորին հետ թղթատարն ու թուղթերը պատրիարքին կը յղէ։ Իսկ նա ոչ կը բանայ և ոչ կ'ընդունի, այլ ետ կը ղրկէ Միքայէլին, թէ մեզի վերաբերեալ՝ գիրեր չեն, առած տեղը դարձնէ։ Այսպէս կը գրէ Զաքարիայի յիշատակագիրը, վկայելով թէ ականատես և ականջալուր եմ այսմ* (Դիւ. ժ. 286-289)։ *Երկու օր ետքը Աւստրիոյ դեսպանատան թարգման մը կու գայ գանգատիլ, թէ գէսպէին մեր ըմբռնեալ են, և ի յԵւրոպ նորա առեալ զնամակն բացեալ և ընթերցեալ Զաքարիա կը հերքէ ղրպարտութիւնը, և Միքայէլն ալ կանչել տալով եղելութիւնը պատմել կու տայ։ Սակայն թակարդը կանուխէն պատրաստուած էր Զաքարիան տապալելու։ Դեսպանը բողոքագիր կու տայ եպարքոսին, և իբր հատուցում պատրիարքին պաշտօնանկութիւնը կը պահանջէ։ Իզզէթ եպարքոս իւր փոխանորդին կը յանձնէ գործը ստուգել, պաշտօնեայ մը կը ղրկուի պատրիարքին որ ճշմարտութիւնը կը բացատրէ, Միքայէլ սեղանաւորէն տեղեկութիւն կ'առնուի, թղթատարն ալ հարցուփորձի կ'ենթարկուի, և ամէնուն խօսքերը իրար կը հաստատեն* (Դիւ. ժ. 290-294)։

**2157.** *Իզզէթ եպարքոս այս տեղեկութեանց հիմնուելով, դեսպանին դիմումին ոյժ չտար, և դիտել կու տայ որ եթէ դեսպանատան գիրեր էին, այսպիսի աննշան մէկու մը չէին յանձնուեր։ Կասկածաւոր թըղ-*

թատարն ալ արգելական կը պահէ խնդիրը աւելի պարզելու համար։ Ասոր վրայ Աւստրիոյ և Գաղղիոյ դեսպանները միացած ուղղակի սուլտանին կը բողոքեն, պատրիարքին պաշտօնանկութիւնը պահանջելով, որով, կ'ըսեն, միրախօրին անցքէն մը դարձ, և կանոն մը տանոս չհաստատուեցաւ։ Այսպէս Համիտ կայսր ալ կրկնելով գերծանելէ խնդրանաց նոցա, պատրիարքի փոփոխութիւնը կը հրամայէ։ Թէպէտ եպարքոսը յոյժ ջանացաւ զիւր փոխումն նորա հնարել, սակայն անդառնալի եղաւ թագաւորական հրամանը։ Ժողովուրդին դիմումներն ալ օգուտ չունեցան, զի խնդիրը քաղաքական գոյն էր առած, և դիւանագիտական կնճռոտութեանց դուռ կրնար բացուիլ։ Տուաճի Իսմայիլ էֆէնտիի պաշտօն տրուեցաւ կայսերական հրամանը գործադրել, որ զինուորներու ջոկատով մը պատրիարքարան ներկայացաւ 1781 մայիս 29 չաբաթ օր. կայսերական հրամանագիրը կարդաց, որ կը հրամայէր Պրուսա երթալ, և հրաւիրեց անմիջապէս ճամբայ ելլել Թումգաբուի առջեւ պատրաստ կեցող նաւով։ Ժողովուրդը յուզը առած և խուռն լեցուած էր յարգանքի ցոյց մը ընելու, Զաքարիա ալ պատրաստութիւնները ըրած էր, ուստի խօսքն խոնարհեալ յանձն էառ խնդրանօք [illegible], և Իսմայէլի հետ ուղեւորեցաւ դէպի ծովեզերքը՝ հազիւ կրնալով ճեղքել խուռն բազմութիւնը։ Ժամը երեկոյեան դէմ 10 էր, երբ նաւ մտաւ, և մինչեւ 12 սպասեցին որ ի դառնալ ընդ նորա ի նաւն։ Զաքարիա նաւին մէջը ոտքի վրայ կանգնելով օրհնեաց զողջն ամենայն, զժողովն և զնախարարսն, և այնպէս արձակեց ժողովուրդը մխիթարական խօսքերով։ Նա ոչ միայն իր վեհանձն ընթացքովը գիտէր ինքզինքը հանդարտ պահել ձախող պարագաներու մէջ ալ, այլ և նոյն պահուն յաղթուածէ աւելի յաղթականի զգացում ունէր, զի նոյն մայիս 29'ի առտուն Իսմայէլի գալէն իբր երեք ժամ յառաջ, գիր հասած էր Անկիւրիայէ յաղագս ամմոն եկեղեցեաց ուրեցանց։ Ուզուն Մէհմէտ սահմանական հրամանով փակցուցեր էր իր ուղեւորութիւնը, և անմիջական գործադրութեամբ, հաներ էր եկեղեցիները կաթոլիկներուն ձեռքէն, և առաջնորդ Պօղոս վարդապետին յանձնած։ Նոյն նաւին մէջ Զաքարիայի կ'ընկերանային Տուաճի Իսմայիլ էֆէնտիէ զատ, իր աշակերտներէն Թովմաս և Պօղոս վարդապետներ, Յակոբոս սարկաւագ, Մեսրոպ և Պօղոս դպիրներ, վերջինը իր եղբօրորդին, և երեք ծառաներ։ Պաշտօնեան դառնալով և խնամով տարաւ աքսորական Զաքարիան, և բազում մխիթարական բանիւք սփոփեց զայն, յայտարարելով ևս թէ իրեն հրահանգ տրուած էր, յաղթուածութեամբ տարցեն և մ' նեղեսցեն զնա, զի այս նմա ի շնորհ պատահեալ եղեւ։ Կ-Պոլսէ 15 ժամ նաւագնացութեամբ կը հասնին Մուտանիա, և 2 ժամ ետքը անկէ մեկնելով, կիրակի 30 մայիս երեկոյեան ժամ 11'ին Պրուսա կը մտնեն, ժողովրդական և պետական փառաւոր ընդունելութեամբ (Դիւ. Ժ. 295-301)։ Միւս օր Իսմայիլ էֆէնտի ետ կը դառնայ իրեն հետ բերելով Պրուսայի առաջնորդ Յովհաննէս Համատանցի եպիսկոպոսը, որ Զաքարիայի յաջորդելու նշանակուած էր, և յունիս 2'ին չորեքշաբթի օր հանդիսապէս պաշտօնին ձեռնարկեց (ՍՐԳ.)։

ՁԱՔԱՐԻԱ ՊԱՇՏՕՆԱՆԿ

**2158**. Պատրիարքի փոփոխութիւնը կաթողիկոսական խնդիրին կերպարանը փոխեց։ Յիշուեցաւ (§ 2153) թէ մայիս 2'ին դեռ Կ-Պոլիս չէր հասած միաբանական ժողովին պաշտօնագիրը (Դիւ. Դ. 196), և թէ անկէ ետքը նորագոյն գրեալ դրկուեցաւ նոյն գիրը (Դիւ. Դ. 197), որով մայիս 29'ին, Զաքարիայի պաշտօնանկութեան օրը Կ-Պոլսոյ մէջ պաշտօնական գիրեր հասած չէին կրնար ըլլալ։ Անոնք Համատանցիին ձեռքը յանձնուեցան, որ կաթողիկոսական խնդիրին մասին Զաքարիայի զգացումները չունէր, և ժողովուրդին մէջ ալ Ղուկասի հանդէպ համակրութիւնը երթալով տարածուած էր (§ 2154)։ Զաքարիայի արկածն ալ իր նշանակութիւնն ունեցաւ, և տարադէպ զգացումներուն իբր ձախող հետեւանք մեկնուեցաւ, ուստի նոր պատրիարք և մեծամեծներ որոշեցին դիմադրութեան վերջ դնել։ Օսմանեան կառավարութեան դիմելով հաստատութեան հրովարտակը առացան և փութացին

ՂՈՒԿԱՍ ԸՆԴՈՒՆՈՒԱԾ

հացէին զրկել, օրհնութեան կոնդակները հրատարակուեցան, անունը եկեղեցական պաշտամանց մէջ սկսաւ յիշատակուիլ, և Ղուկասի կաթողիկոսութիւնը պաշտօնապէս և գործնականապէս ճանչցուեցաւ Տաճկահայոց կողմէն։ Անկէ ետքը միայն՝ Ղուկաս վերջ տուաւ իւր քաշուած վիճակին, և երբ ընդհանուր ազգին կողմէ իւր իշխանութիւնը ճանչցուեցաւ, նորէն սկսաւ Մայր տաճարին մէջ հայրապետական գահը բազմիլ, կարմիր կնիք գործածել, և ամէն կողմ օրհնութեան կոնդակներ ղրկել, առանց երբեք անցեալոյն վրայ վիշտ յայտնելու։ Ղուկասի քաշուած և կաթողիկոսական ձեւակերպութիւններէ հրաժարած միջոցը եղած է ոսկին (ԴԻՒ. Դ. ւԲ.), կամ փառն ամբ (ԴԻՒ. Ա. 5), և ոչ երբեք շահն եկեղ (ՄՍՐ. 8), զի 1780 յուլիսին վախճանած էր Սիմէոն, իսկ 1781 յուլիսին հարկաւ հասած էր Էջմիածին Կ-Պոլսոյ մէջ տեղի ունեցած փոփոխութեանց արդիւնքը։ Ղուկաս երբեք ձեռքէ հանած չէր աթոռին վարչութիւնը և վանքին մատակարարութիւնը, և միաբանութիւնը շրջապատած էր զայն համակրութեամբ և օժանդակութեամբ, բայց հարկաւ մեծ գոհունակութեամբ ընդունեցաւ Համատանցիի ձեռնտուութեամբ ստացուած ելքը, և աւելի ազատօրէն սկսան կարգադրուիլ պաշտօնական գործերը։

2159. Եթէ Համատանցիին պատրիարքութիւնը դիւրացոյց կաթողիկոսական խնդիրին լուծումը, բնաւ չի նպաստեց կաթոլիկական խնդիրին, որ կարծես շատ աւելի սաստիկ և բուռն վիճակ մը ստացաւ։

**ՀԱՄԱՏԱՆՑԻԻՆ ԸՆԹԱՑՔԸ**

Համատանցին աւելի նախանձայոյզ երեւցաւ քան Կաղզուանցին, և ոչ ալ գիտցաւ անոր ճարտար և մտացի կերպերը գործածել, այլ կատարելապէս աններող վարմունք մը ձեռք առաւ։ Հրամայեց զդրօշն Նոյս ամենայն լուծել, և զկերպարանն արքելեայ, գլխաւորներէն շատերը է Բետաղշ Բանայ չքեաց (ՍՐԳ.), որոնց մէջ կը յիշուին Հանըմեան, Նալպանտեան, Հիւրմիւզեան, Թընկըրեան ընտանիքներու անունները (01 ՕՐԱ. 155), և Դաղարոսղուս այր ամ, Տէրզըզլու Քէօշ, Հարոսսոփ անուանէ (ՍՐԳ.)։ Ուրիշ խստութեանց վրայ նորօրինակ բան մըն ալ հնարեց, զի հետեւելոց մահուցն մերտիզանէ կամ սանդուխի նման ծող կամ դագաղ չէնել ես, և դորանէ կողեալ զմահն է վերայ տանել դատաւորեալ (ՍՐԳ.)։ Կաթոլիկները որ այնչափ ուրախութեամբ ողջունած էին իրենց նենգամիտ դաւաճանութեան ելքը և Զաքարիայի պաշտօնանկութիւնը, սկսան իրենց բրածին վրայ զղջալ, կարծես թէ փնտռելով Զաքարիայի օրերը (ԴԻՒ. Ժ. 303)։ Համատանցին իրեններն ալ զզուեցուց, և սկսաւ ազգին ոտքէ և խոտէ երեւնալ վասն փոխուղ Բարոյն, և յաւէ և անդէտն նկատուիլ յաղագս մեծաբանութեան խորոսի, մանաւանդ երբ զնախորդ դարերուն ածելով է մէջ Բարոյեան բանիս նախադասեր զվարդաէ նորա (ԴԻՒ. Ժ. 303)։ Սակայն աքսորական և բանի հեռացումը՝ աւելի եւս շատցուցած էր Զաքարիայի հանդէպ ընդհանուր համակրութիւնը, անմեղ զոհ մը նկատուելով գաղտնի և չարամիտ նենգութեանց։ Համատանցին շատ երկար չկրցաւ վայելել բախտովին ձեռք անցուցած պատրիարքութիւնը, վասնզի վեց ամիս ետքը, նոյն 1781 տարւոյ վերջերը, յայտնի ընդդիմութիւնները սկսան, և ընկենուլ յիշխանութենէն եւս ճգնեցան։ Համատանցին այդ ընդդիմութեան դէմ դնելու համար, հրամանագիր հանել տուաւ թէ ով որ իւր պատրիարքութիւնը չընդունի զնա կրելոց է տանջս կործեոց, և այս պատրուակով տանէ մի անձինս տառապեաց է Բե։ Ժողովուրդին մէջ զայրոյթը աւելցաւ, մինչեւ ցանցեալ նորա ընդդէմ ցասուցեալն է նա, և եթէ նա չէր փախուցեալ և ծածկեալ է մատանէ եկեղեցւոյն, թերեւս վտանգի մըն ալ հանդիպէր։ Ասոր վրայ Բերեալ դահճաց է զենուորոց, նստոյց է մէջ եկեղեցւոյն, սակայն աւելի եւս գրգռեց կացութիւնը, և չհանդուրժեալ այնմ ազգին, խնդրեցին է նմանէ տալ զբռնաւորականն։ Խռովութիւնը օրէօր եռացանչեաւ սաստկացաւ, և հանրութեամբ դիմումներ եղան սուլտանին և եպարքոսին, պատրիարքը հեռացնել և Զաքարիան բերել։ Ժողովուրդի մեծ գրգռութեան պատճառներէն մէկն ալ այն եղաւ, որ լուր առնուեցաւ, թէ Համատանցին դիմում բրած է կառավարութեան՝ Զաքարիան Պրուսայէ հեռացնել և ի Հետասար աքսոր տանել։ Այսպէս տեւեաց այս խռովութիւն մինչեւ երեք ամս

(Դիւ. ժ. 304), և Համատանցին չկրցաւ խաղաղ պաշտօնավարութիւն ունենալ։

**2160.** Այս միջոցին Զաքարիա հեռուէն հանդիսատես՝ անցած դարձած չփոթութիւնները կը դիտէր, և կը գրաղէր Պրուսայի առաջնորդութեան գործերով, ըստ կարի կարգադրելով տեղւոյն կացութիւնը, յանձանձելով ժողովուրդին պէտքերը, և համակրութիւն աճեցնելով իրեն շուրջը։ Միեւնոյն միջոցին մանրամասնեալ տեղեկութիւններ կը ստանար Ուզուն Մէհմէտի Անկիւրիոյ մէջ ունեցած գործունէութեան, և չորս եկեղեցիներուն կաթոլիկներէն առնուելուն վրայ, որուն առաջին լուրը լսած էր պատրիարքարանէ մեկնած ժամուն (§ 2157)։ Զորս եկեղեցիներ խաղաղութեամբ ազգային առաջնորդարանին ձեռքը կը մնային, 12 աքսորեալներէն Մաղաքիա Էմիրզէօղլու և Յովհաննէս Պըլճըօղլու, որ վերջի անգամ կըրկին ձերբակալուած էր (§ 2156), մեղայի գալով և ստորագրութիւն տալով ազատած էին, ահտնամէ խիւնքեարի ճան վէ պաշ պաղըշլա, կաթոլիկութենէ ետ դարձած և տուգանքի յանձնառութեամբ ստորագրութիւն տուած էին։ Զաքարիա ասոնք լսելով յոյժ սուրկիւնէյէ վէ զընտանա չեքիլէյա, զի գոնէ այն արկածին՝ որուն ենթարկուեցաւ, ղուրպէնան էֆէնտի ամյադայ։ Անդին Կ-Պոլսոյ մէջ Համատանցիին դէմ հակառակութիւնը օրէօր սաստկացաւ, կառավարութիւնն ալ տեսաւ, որ այլեւս անհնար է անոր պաշտօնի վրայ մնալը, և մերձակայ զատկի տօնին առթիւ անտեղութեանց առիթներ պիտի տրուին, ուստի 1782 մարտի կէսին ատենները, հրաման ըրաւ որ Համատանցին պատրիարքարանը թողու, և երթայ Գարթալ գիւղը նստի, Մարմարայի հանդիպակաց եզերքը, և ժողովուրդն ալ ազատօրէն իւր կամքը յայտնէ պատրիարքական խնդիրին մասին։ Համատանցին հեռացաւ, և ճողուխուլ խաղմացը մի բոս հրամանը տէրուրեան, բացարձակ միաձայնութեամբ Զաքարիայի աքսորէ բերուիլը և նորէն պատրիարք ըլլալը խնդրեցին, և յայտարարեցին, որ ուրիշ մը, եթէ հրեշտակ էսա էյէ, չէ մէկ ընտանէյլէ, և ուլ խաւալուրեանայա տանայ դուդուրուլ։ Եպարքոս Իզզէթ Մէհմէտ, արդէն յակամայից Զաքարիայի պաշտօնանկութեան համակերպած էր (§ 2157), ուստի հաճութեամբ հաւանեցաւ, և կայսերական հրամանն ալ ստանալով, իսկոյն պաշտօնագիրը գրեց և Պրուսա յղեց, արքունական պաշտօնէի ձեռօք Զաքարիան մայրաքաղաք առաջնորդելու համար։ Գիրը Պրուսա հասաւ Զատկի կիրակի օրը արեւմտնալէն ժամ մը ետքը, 1782 մարտ 27'ին, որ օր կը հանդիպէր զատիկը, և ոչ 25'ին, ինչպէս գրուած կը գտնենք Ե և Է թուատառերու շփոթութեամբ։ Պաշտօնեան կը ստիպէր միւս առտու ճանապայ ելլել, բայց Պրուսայի խաւալճէնդաղը մէծ աղայն ընդդիմացաւ ըսելով, թէ պատիւ մը չըրած չթողուր, քանի որ Զաքարիա ցարդ ջէւր նապեալ մենեկէն ալտաթո ուլ է եկյալ, բոյ է չեկեմեյէ քնալայն։ Անկէ ետքը զինուորական հետեւորդներով և ժողովրդական ուղեկիցներով Պրուսայէ մեկնեցան զատկի երեքշաբթի առտուն մարտ 29'ին, և այն գիշեր Ղարասախ գիւղը օթեւանեցան, և չորեքշաբթի 30 մարտ՝ Ջէնկիլէր հանդիպելով իջան Եալօվա, և յատուկ բերուած նաւով ճանապայ ելան, բայց ալեկոծութեան հանդիպելով անմարդաբնակ կղզի մը ապաւինեցան, և հոն գիշերեցին։ Կանուխ այն տեղէն մեկնելով Հարէմիսկէլէսի նաւահանգիստը ելան հոտեղ թողուլմն մէծէ, ուսկից եպարքոսական հրաւիրակ մը զիրենք պետական դուռը առաջնորդեց (Դիւ. ժ. 305-307)։

**2161.** Զաքարիա մայրաքաղաք ոտք կոխելուն ահագին բազմութիւն խռնուած կը գտնէ դիմացը, ոչ միայն Հայ ազգայիններէն, և ժողովուրդին ամէն դասակարգերէն, այլեւ յայլ ամենայն ադէօր, և չիտակ եպարքոսին կ՚երթայ, որ պարտուպատշաճ մեծարանօք և պատուասիրութեամբ կ՚ընդունի, և յորդորական մըն ալ կը խօսի, թէ փոա մ՚ ֆիտնէր է մէկթո, այլ որթան յաայն էեր, թան պայն յեր խանաքն և գէղ, և բարաթ կոառալայեջեք ղայէնթո, որդէ մինչև ցայժմ կոառալայեր (Դիւ. ժ. 307), և չէնէ թէ ֆերան ցանէօնացանելու անէնցինեցէ արթայն (ՍՐԳ.)։ Տեսակցութեան վերջը, ղէեցայց նմա գէշխանաթեան կողայն, և պատրիարքարան ղրկեց պատիւներով, ուր

ՆՈՐԷՆ ԶԱՔԱՐԻԱ

ԳՈՐԾԻ ԿԸ ՍԿՍԻ

*խնդակցութեան ցոյցերը նորոգուեցան, և այսպէս 1782 մարտ 31 հինգշաբթի օր՝ հանդիսապէս մտաւ այն պատրիարքարանը, ուսկից մեկնած էր 10 ամիս առաջ 1781 մայիս 21'ին (§ 2157)։ Զաքարիա իրօք ալ մեղմ և խոհեմ ընթացք մը բռնեց, և ամէն կողմէն եղած համակրական ցոյցերուն մէջ նկատելի էր, որ նախ* բուլունմէ է հէօքէլյոց *կուգային իրենց յարգանքը մատուցանել, և միանգամայն յայտարարել, թէ* ուլ ձեւր տու ինչ ասմէ, այլ մէ ձեւլէ *(Դիւ. Ժ. 309-310), որով ոչ միայն կրօնական զգացումնին կը վկայէին, այլև վերջին նենգամիտ դաւաճանութեան վրայ զզջումնին կը յայտնէին։ Զաքարիա այսպէս վարուելով, երբեք իւր առաջին ուղղութենէն չեղած չէր, և կաթոլիկական շարժումը զսպելու միտքէն ետ կեցած չէր, միայն թէ կը փորձէր քաղցրութեամբ շահիլ, յօգուտ գործածելով ընդհանուր ժողովուրդէն ցուցուած խանդավառութիւնը, և Համատանցիին թողած տխուր տպաւորութիւնը հեռացնելով։ Իբրև նոր ուղղութեան հաւաստիք, թիապարտութեան մէջ գտնուողներէն* տէօ նէր *արձակել տուաւ, հաւանաբար Համատանցիին բանտարկել տուածներէն։ Սակայն դիտողութիւններ եղան, թէ տեղի տալ սկսած է, և առանց հաւանութեան մեծամեծաց գործել կը փորձէ։ Զաքարիա գանգատներու աճելուն և զօրանալուն առիթ չտալու, և գործին խոհական ուղղութիւն և օգտակար արդիւնաւորութիւն և կանոնաւոր ընթացք տալու համար,* արար խոյս ձողով մէծ է ասրբ Աստուածածնի էկլեղէցին *Գումքաբուի, ներկայութեամբ գլխաւոր եկեղեցականաց,* բոլոր ժողովուրդ, բարեպաշտ էշխանաց, և է մէջ բոլոր էսնաֆից ընտրեալ վարպետաց, *և հաստելոց հանդէպ բռնուելիք ընթացքին մասին, հետեւեալ կանոնները հաստատուեցան։ 1. Եթէ մէկը հարկ ըլլայ պատժել,* չէօր էսնաֆէն էկէալ վէքյալացէն վամն նորա, *իսկ* պարէծն կամ արշակէին է պարծոյն է պատրէարքէն *ըլլայ։ 2. Եթէ մէկուն արձակման համար* էօր էսնաֆէն խնդրած *ըլլայ, պատրիարքը նախապէս քննութիւն ընէ* է ձեռն ժողովոյէն կամ է ձեռն արանց հաստատմաց*։ 3. Պասկի համար պէտք է որ ամուսնացողները* հօգեւորտեացէն յէկեղէցւոյ հա-յասաքնէայցօ, *և խաչ բռնող կնքահայրն ալ* հէրճահօլ *չըլլայ։ 4. Հետեւեալներու զաւակները անարգել մկրտուին, միայն թէ կնքահայրն ալ* հօգեւորտեացէ ըշտ երաեայէ*։ 5. Որ հետեւեալներուն մեռելներուն առջև* մեծ յոյն ժողովոյ քնայցէ, առանց կարգաւորման կարգէ*։ Արգելուեցաւ միանգամայն որ ազգայիններ* ֆռանկաց կամ կաթոլիկաց, *իմա Հայ կաթոլիկ կարգաւոր, է տան* էօրեանց մ' պարցէն *(Դիւ. Ժ. 313)։ Բայց այդ կարգադրութիւններուն օրինական ձևով սահմանուիլը աւելի ծանր եկաւ կաթոլիկութեան հետեւողներուն, և անոնց մէջ ալ լուրջ խնդրոյ առարկայ դարձաւ գործը, թէ հնար չէ՞ արդեօք այդ կարգադրութեանց համակերպիլ, առանց հռոմէադաւան ուղղութեան դէմ մեղանչած ըլլալու։*

**ԱՀԱԳԻՆ ՀՐԴԵՀՆԵՐ**

2162. *Ցիշեալ խնդիրին բացատրութեան չանցած, հարեւանցի յիշենք Զաքարիայի դառնալուն, 1782 տարին պատահած աղետալի հրդեհները։ Առաջինը հանդիպեցաւ Սամաթիա, յունիս 28'ին, Վարդավառի պահոց երեքշաբթի օրը, և գիշերուան ժամ 5'ին սկսելով 15 ժամ տեւեց։ Քիչ ետքը պատահեցաւ Պալաթի հրդեհը յուլիս 12'ին, Վարդավառի երկրորդ երեքշաբթի օրը, և ցերեկուան ժամը 10'ին սկսելով 25 ժամ տեւեց։ Բայց աւելի ահռելի եղաւ երրորդը, որ օգոստոս 10'ին, Աստուածածնայ պահոց չորեքշաբթի օրը, երեկոյեան ժամ 2'ին սկսելով, շարունակեց 66 ժամ մինչև շաբաթ ցերեկ ժամ 8։ Հրդեհը Ճիպալի թաղէն սկսելով, տարածուեցաւ Այազմաբու, Քօսթքա, Վլանկա, Եէնիքաբու, Սամաթիա, Սիլիվրիքաբու ու Եէտիքուլէ թաղերը, և 30,000'է աւելի* տուն և շէնուած պարտակոն յօլէնդ տարչոյց, *այնպէս որ Կ-Պոլսոյ մայրաքաղաքին մեծ կէսը* անապատ արար*։ Այդ աղէտները, որոնց մէջ ընդարձակ Հայ թաղաբաժիններ ալ կային, առիթ ընծայեցին Զաքարիայի նպաստամատոյց գործունէութեան ձեռնարկել։* Արար խորհուրդ ընդ էշխանաց և էշխանապետաց, *և սկսաւ նշանաւոր գումարներ հաւաքելով ամէնուն պարէն և ստուերդ բաշխել տալ, վրաններ պատրաստել տալով բացօթեաները պատսպարել, և*

*ամէն արհեստաւոր խումբերու շրջաբերականներ գրել, և սրտաճմլիկ խօսքերով ամէնքը նուիրատուութեան և ողորմութեան յորդորել։ Արհեստաւորներու 72 խումբերէն կամ էսնաֆներէն՝ 16 հոգիէ բաղկացեալ յանձնաժողով մըն ալ կազմեց, որ հաւաքուած նպաստները խղճի մտօք բաշխեն, որով [illegible] հրկիզուած խեղճերուն* (ԴԻԻ. Ժ. 315-321)։ *Էսնաֆներու կամ արհեստաւորներու 72 խումբերէն 65'ին անունները կը յիշէ Պօղոս Կաղզուանցի յիշատակագիրը* (ԴԻԻ. Ժ. 338), *որ հետաքրքրական է այդ տեղեկութիւններով զբաղողներուն, բայց մեր նպատակէն դուրս է։*

**2163.** *Այդ միջանկեալ յիշատակութենէ ետքը, դառնանք կաթոլիկ կուսակցութեան մէջ յուզուած ներքին խնդիրին, որուն մասին ինչ ինչ ակնարկներ ըրած ենք արդէն* (§2110)։

ԿԱԹՈԼԻԿՆԵՐՈՒ ԴԻՐՔԸ

*Խնդիրը կաթոլիկութեան հետեւողներուն տանելի կացութիւն մը պատրաստելու վրայ էր, իրարու յարմարցնելով Հռոմի կրօնական պահանջները և Օսմանեան պետութեան տիրող օրէնքները։ Քանի որ Տաճկահպատակ քրիստոնէից դիրքը պատրիարքարաններով էր ճշդուած, և կենցաղական ամէն պարագաներ ու գործեր անոնց ձեռքով պիտի կատարուէին, պէտք էր որ կաթոլիկութեան հակամէտներն ալ իրենց կենցաղական գործերը Հայոց պատրիարքարանին իշխանութեամբ կատարէին։ Միջանկեալ կերպով յիշենք, թէ այն ատեն երկու պատրիարքարան միայն կը ճանչնար Օսմանեան կառավարութիւնը, Յոյնն ու Հայը։ Ինչչափ յունադաւան ազգութիւններ կային, Յոյն, Պուլկար, Սրբզ, Առնաւուտ, Վալաք, Մոլտաւ, Ռութէն, Խրուատ, Գարամանցի, Ասորի, Մելքիդ կամ Արար, բոլոր Ուղղադաւաններ՝ որոնք Երկաբնակ դաւանութիւն ունէին՝ Յոյն պատրիարքարանին կը հնազանդէին։ Իսկ միացեալ արեւելեան քրիստոնեաներ, Հայ, Վրացի, Աղուան, Ասորի, Ղփտի, Հաբէշ, Քաղդէացի, որոնք ընդհանրապէս Միաբնակ դաւանութիւն ունէին, Հայ պատրիարքարանին ներքեւ էին։ Լատին կաթոլիկներ իբրեւ օտարներ նկատուած էին, իսկ Արեւելցիներէն կաթոլիկութեան հետեւողներ իրենց ազգէն դուրս յատուկ համայնք չէին կազմեր, և պարտաւորեալ իրենց կենցաղական գործերը Հայ պատրիարքարանի իշխանութեամբ պիտի կատարէին։ Այստեղ կը ծագէր տիրող կընճիռը։ Կաթոլիկութիւն տարածող Լատին քարոզիչներ և զայն պաշտպանող եւրոպական դեսպանատուններ, կը ջանային իրենց դաւանութեան յարող Հայերը, բոլորովին իրենց ազգեցութեան ներքեւ բերել և Հայ պատրիարքարանէ հեռացնել, և այս նպատակով կրօնքի և խիղճի կնճիռներ կը յարուցանէին, թէ այդ դիմումները հերձուածողներու կամ հերետիկոսներու հետ է* [illegible] *եղած կ՚ըլլան, և ներեալ չեն։ Բուն Լատիններուն ձայնակից էին Փրոփականտայի Հայ աշակերտներ, և միեւնոյն սկզբունքը կը պնդէին, և ասոնք կը կազմէին Պոլէճեան կամ Պոլէճցի կոչուած խումբը։ Ասոնց հակառակ էին Մխիթարի աշակերտութենէն Վեներիկ մնացողները, որոնք մէկ կողմէն զուտ հայկական կաթոլիկութիւն մը կազմել կ՚ուզէին, և միւս կողմէն կաթոլիկութեան հետեւողներուն հանդարտ կացութիւն մը գտնել կը ճգնէին, Օսմանեան տիրող օրէնքներու համակերպութեամբ և ազգային կաթողիկոսութեան և պատրիարքութեան հովանաւորութեամբ։ Արդէն Էջմիածինի կաթողիկոսներուն անուններն ալ իրենց գիրքերուն ճակատը կը մակագրէին, որով անոնց իշխանութիւնը ճանչցած կ՚ըլլային։ Ասոնք ալ Աբբայեան կամ Աբբացի անունով կը յիշուէին։ Երկու կողմերն ալ իրենց համակիրներն ունէին կաթոլիկութեան հետեւողներուն մէջ, բայց բնիկ Կ-Պոլսեցիներ կամ քաղաքացիներ՝ առաւելութեամբ Աբբացոց հետ էին, իսկ Անկիւրացիք կամ Գաղատացիք՝ Պոլէճցոց կը հետեւէին։ Հայ հռոմէական եկեղեցականութեան մէջ կային եւս Լիբանանի Անտոնեան միաբաններ, որոնք շատ որոշ և վերջնականապէս շեշտուած ուղղութիւն չէին յայտներ. Աբբացոց կը համակրէին, բայց բացարձակ գործակցիլ կը խիթային։ Իսկ Թրիէստի Մխիթարեաններ յայտնի կերպով Պոլէճցոց կը գործակցէին, զի Վենետիկի ճիւղին հետ*

համընթանալ չէին սիրեր։ Անա կաթոլիկ խումբին մէջ յուզուող ներքին խնդիրին բուն ոգին ու ծագումը։

**2164**. Վենետիկի Մխիթարեանց մէջ տիրող ուղղութիւնը իրենց մէջ ժառանգական կրնանք ըսել, անդրդուելի իրենց հիմնադիրէն Մխիթարէ մնացած (§ 1987)։ Իրենց մէջ կանուխէն՝ այդ ուղղութեան մեծ ջատագով մը եղած էր հայր Գէորգ Այնթապցին, իսկ անկէ ետքը աւելի գործունեայ պաշտպան երեւցած էր հայր Միքայէլ Չամչեան։ Սա պաշտպանողական գրուածներով ուզեց հաստատել, ինչ որ իւր միաբանութեան տեսութեանց հիմնաքարն էր, թէ հռոմէականութեան հետեւողներուն արգելեալ չկրնար ըլլալ Հայ եկեղեցիէ խորհուրդներ ընդունիլ, և մկրտութեան ու ամուսնութեան ու թաղման համար օրինաւորապէս նոյն եկեղեցիին դիմել, որովհետեւ Հայ եկեղեցին իւր վարդապետութեամբ հռոմէադաւանութենէ օտար եղած չէ, և երբեք իբրեւ հերձուածող կամ հերետիկոս Հռոմի պապութենէն դատապարտուած չէ։ Այդ նպատակին ծառայող Չամչեանի մեծ գործն է, Պատմութիւն Հայոց ըստ աւանդելոյ այլևայլ մատենագրաց, եռհատոր ստուար հրատարակութիւնը, բովանդակ 2975 երես, և որ իւր ժամանակին դարագլուխ կազմած է, Հայոց ազգային պատմութեան ամբողջութիւն մը ներկայելով ի սկզբանէ աշխարհի մինչև ցամ տեառն 1784։ Առաջին հատորին տպագրութիւնը 1784 յունիս 15 թուական կը կրէ (ՉԱՄ. Ա. 1), իսկ երրորդը լրացած է 1786 ապրիլ 16'ին (ՉԱՄ. Գ. 1). սակայն շատ կանուխէն պէտք է դնել աշխատասիրութեան թուականը, ինչ որ նշան մըն է, թէ գաղափարին պաշտպանութիւնը կանուխէն յղացուած գաղափար մըն էր։ Չամչեանի պատմութիւնը, անկախաբար պատմական տեսակէտով ունեցած իւր արժանիքէն, կանխամտածուած և սեւեռեալ որոշ գաղափարի ծառայող գործ մըն է, ամէն առիթի մէջ Հայերը Հռոմի մօտ, Հռոմի հետեւող, Հռոմի հպատակող ցուցնելու համար, անխտիր ընդունելով կեղակարծ յիշատակներ, քմահաճ մեկնութիւններ, և թիւրիմաց տեսութիւններ։ Չամչեանի գրիչին տակ, հին դարերուն գործերը՝ երբ եկեղեցիներ իրարու հետ հաշտ էին, Հռոմի հնազանդութիւն կը դառնան։ Միջին դարու մէջ քաղաքական նպատակով յայտնուած զիջողութիւններ, կատարեալ հռոմէադաւանութեան կերպարան կ'առնեն։ Իսկ Հայոց եկեղեցւոյն ներողամիտ հոգին և ուրիշ եկեղեցիներու հետ յարաբերութիւններ պահելու պատրաստականութիւնը, հայադաւանութեան ուրացութիւն կը մեկնուին։ Նոյն իսկ մասնաւորներու պատահական կամ քաղաքավարի խօսքերը, մինչեւ անգամ նամակի հասցէները, պաշտօնական դաւանութեան կը փոխարկուին։ Մեր նիւթին հետ կապ ունեցող տեսակէտն է միայն, զոր այստեղ ուզեցինք մատնանիշ ընել, թէ ոչ հնար էր Չամչեանի ժամանակագրական և քննադատական տեսութիւններուն վրայ ալ դիտողութիւններ ընել, սակայն կ'ընդունինք թէ իւր ժամանակին պատմական ուսումն ալ մեծ քայլեր առած չէր, որ ինքն ալ կարենար անոնց հետեւիլ և անոնցմէ օգտուիլ։

ՉԱՄՉԵԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

**2165**. Չամչեանի Հայոց պատմութիւնը անուղղակի պաշտպանութիւն էր Վենետիկի ընդգրկած մեծ սկզբունքին, բայց ուղղակի ալ նոյն նպատակին ծառայող աշխատութեան մը պէտքը զգացուելով, միեւնոյն ժամանակ երկրորդ երկասիրութեան մը ձեռնարկած էր Չամչեան, Վահան Հաւատոյ անունին ներքեւ, յորում հաստատի ուղղափառութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ, ըստ հաւատոյ սրբոյն Գրիգորի Հայաստանեայց Լուսաւորչի մինչև ցայսօր։ Ցիշենք անգամ մըն ալ անցողակի կերպով, թէ Չամչեանի միտքով ուղղափառութիւն բառը համադաւանութեան տեղ գործածուած է։ Այդ գործը սկսած է պատրաստել 1776'ին, որ է ըսել, միեւնոյն միջոցին որ պատմութիւնն ալ կը գրէր։ Այդ աշխատութիւնը ոչ միայն տպագրուած չէ, այլ և բոլորովին անծանօթ մնացած է, և իբրեւ հետաքրքրական գործ մը կ'արժէ որ քիչ մը աւելի տեղեկութիւն տանք անոր մասին, աչքի առջեւ ունենալով այն հազուագիւտ գրչագիր օրինակը, որ Անտոնեանց մատենադարանին մէջ կը գտ-

ՎԱՀԱՆ ՀԱՒԱՏՈՅ

*նուի։ Քառածալ մեծութեամբ, և իւրաքան-չիւր երեսը* 40 *տողով,* 924 *երես ստուար հատոր մըն է գործը։ Համառօտ յառաջաբանէ մը ետքը* (ՁՄՁ. 1-5), *խաղեկութեանց առաջին մասին մէջ կը բացատրուի, Վէճ Հայաստանեայց Եկեղեցւոյ յերկրատանցէր դուռ* (ՁՄՁ. 7-52), *և երկրորդ մասով կը ներկայացուի, Բովանդակութիւն մոլորութեանց քաղ-դէլոց ի ճառախօսաց ի վերայ ազգին Հայոց* (ՁՄՁ. 52-80)։ *Կարծեցեալ մոլորութիւններուն մէջէն տասը հատը կ'ընտրէ, և իւրաքանչիւրը ընդարձակօրէն կը բացատրէ և կը հերքէ, որք են.* 1. *Քաղկեդոնի ժողովին մերժումը* (ՁՄՁ. 81-115)։ 2. *Մի քննութեան բացատրութիւնը* (ՁՄՁ. 115-179)։ 3. *Հոգւոյն սրբոյ ի Հօրէ բղխումը* (ՁՄՁ. 179-194)։ 4. *Հանդերձեալ կեանքի վարդապետութիւնը* (ՁՄՁ. 195-270)։ 5. *Սուրբ Աստուած 'ի խաչեցար'ը* (ՁՄՁ. 270-352)։ 6. *Ծննդեան տօնին օրը* (ՁՄՁ. 353-373)։ 7. *Անապակ բաժակը* (ՁՄՁ. 374-709)։ 8. *Վերջին օծումը* (ՁՄՁ. 709-737)։ 9. *Ծիսական օրէնքները* (ՁՄՁ. 738-768), *և* 10. *Հռոմի նախագահութիւնը* (ՁՄՁ. 769-799)։ *Յաւելուածական գլուխ մը ունի։* 11. *Յաղագս ազատ գոլոյն եկեղեցւոյն Հայոց ի հերետիկոսութենէ և ի հերձուածողութենէ* (ՁՄՁ. 800-855), *որուն կը կցէ մաս մըն ալ, Յաղագս տանէ մի անձանց, ճշրոց ճառախօսեն ամանէ* (ՁՄՁ. 856-886). *և յատկապէս կը յիշէ Պարսամը, Օձնեցին, Որոտնեցին, Գրիգոր Տաթեւացին և Մովսէս Տաթեւացին։ Այդ աշխատութիւնը որուն ճակատը գրուած կը գտնենք, թէ պատրաստուած է ինքնակամ յօժարութեամբ և ազատաբրութեամբ միաբանութեան խոյրոյ, իբր գաղտնիք պահուած էր, և հանրութենէն ծածուկ կը մնար, զի ոչ Զամչեան ինքն, և ոչ իւր միաբանութիւնը, չէին համարձակիր պաշտօնապէս ստանձնել խնդիր մը, որ ուրիշներէն կասկածաւոր կը դատուէր, այլ կը ջանային անպաշտօն կերպերով գաղափարը տարածել։ Պատրաստուած Վահան'ը պատշաճ պարագային պաշտպանութեան ասպար պիտի ըլլար, կամ լաւ եւս՝ իբրեւ պատրաստ զէնքերու մթերանոց պիտի ծառայէր։*

**2166**. *Միւս կողմէն խնդիրը բախտին բերմանց թողուլն ալ մտացի կերպ մը չէր, և չէր կրնար ապահովապէս դիտուած նպատակին հասցնել։ Այս երկճղի կացութեան մէջ ճարտար մտածմունք մը եղաւ՝ պատասխանատու անուն մը գտնել, և այդ մասին մեծ եղաւ Վենետիկ բնակող հայազգի Յովհաննէս Սեղ-*

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՍԵՂԲՈՍԵԱՆ**

*բոսեանի օժանդակութիւնը, որ է Վենետկեան ազնուականութեան մէջ ընդունուած Հայազգին Յովհաննէս Սերբոս մարքիզ* (Marchese Giovanni di Serpos) *տիտղոսով։ Սա յանձնառու եղաւ իր անունով դիմումներ ընել Հռոմի պապութեան, և յայտնապէս անոր հաւանութեան ենթարկել խնդիրի նիւթ եղող դրութիւնը, Փրոփականտայի ատեանին առջեւ զայն պաշտպանել, և յաջողցնելու համար պէտք եղած միջոցները գործածել։ Մէկ խօսքով ծախք ու աշխատանք չխնայել լատինական ազդեցութենէն անկախ Հայ կաթոլիկութիւն մը կազմելու, որ հռոմէադաւան ըլլայ իւր ներքին համոզումներով և կարծիքներով, և հայադաւան եկեղեցիէ չզատուի իր հանրական և եկեղեցական յարաբերութիւններով։ Այս դրութեան արդիւնքը պիտի ըլլար Օսմանեան պետութեան կասկածները չզարթուցանել, և անոր կողմէն խիստ և բռնադատիչ միջոցներու առիթ չընծայել։ Ըստ այսմ Յովհաննէս Սեղբոսեան կամ Սերբոս մարքիզը, նախապէս մասնաւոր նամակներով Փրոփականտայի իմացուց հռոմէադաւան Հայերուն Թուրքիոյ մէջ ունեցած տառապագին վիճակը, տեղական օրէնքներով քրիստոնէից ունեցած կացութիւնը, Լատին քարոզիչներու մոլեռանդ պահանջկոտութենէն յառաջ եկած անտեղութիւնները, եւ հրաման խնդրեց գործը պաշտօնապէս իրենց քննութեան ենթարկել* (ՍԵՐ. VI)։ *Առաջարկը ընդունուեցաւ և արտօնուեցաւ գրուածը պատրաստելու, և* 1783 *հոկտեմբեր 9'ին տպագրութեան հրամանն ալ տրացաւ* (ՍԵՐ. XII), *և հաւանաբար տպագրեալ օրինակով խնդիրը Հռոմի ներկայացուց։ Սեղբոսեան կը խոստովանի թէ ինքն օտար է դաւանական և աստուածաբանական ուսումներէն, և թէ ուրիշներ էր յետոյէն քանելով, էրէն առաջնորդեցին ընդդէմ եւ եղելութեանց ճշմարտութեան դէմ* (ՍԵՐ. VII)։ *Ասով յայտնի կը ցուցընէ թէ Վենետիկի միաբանութիւնն էր*

*գործին հեղինակը և գրուածը պատրաստողը, հետեւելով այն ուսումնասիրութեանց, որոց վրայ Չամչեան անխոնջ աշխատութիւն էր թափած։ Յառաջաբանին մէջ լուսլեայն Լատին քարոզիչներուն կ'ակնարկուի, երբոր կը յիշուին անոնք, որ կամ ըռֆաղանց պահանջկոտութիւններէ, եւ կամ մարդկային նպատակներէ և տեսութիւններէ մղուած, աշխատած են մինչև հիմակ Հռոմէն ծածկել հալածանքներուն ճշմարիտ պատճառները, որոնց միշտ ընդ միշտ դժնդակ տագնապներով ենթարկուած է Արեւելեան Հայերուն կաթոլիկ հատուածը* (ՍԵՐ. IX)։ *Կը խնդրուի միանգամայն, որ այդ մասին պատշաճ հրահանգները տրուին Կ-Պոլսոյ պապական փոխանորդին և Լատին քարոզիչներուն* (ՍԵՐ. X)։ *Այդ յայտարարութիւնները ո՛չ միայն կը բացատրեն Աքքայեանց ընդգրկած դրութեան հոգին, այլև կ'արդարացնեն մեր քանիցս յայտնած ու կրկնած տեսութիւնը, թէ Լատին քարոզիչներու մոլեռանդ եսականութիւնն էր, որ իրենց հետեւողները խստութեանց ենթակայ կ'ընէր, ստիպելով զանոնք այնպիսի վարմունքներու՝ որոնք ոչ միայն ազգային կացութիւնը կը խանգարէին, այլև տէրութեան կասկածները կը զարթուցանէին,*

**2167**. *Սեղբոսեանի անունով Հռոմի Փրոփականտային քննութեան և որոշման ենթարկուած երկու խնդիրները բացատրուած են հետեւեալ կերպով*։

ԵՐԿՈՒ ԽՆԴԻՐՆԵՐ

1. *Թէ նկատելով Թուրքիոյ կացութիւնը և եղելութիւնները, կրնա՞յ արդեօք ներուիլ Հայ կաթոլիկներուն, որ կարենան երբեմն մտնել Հայ ազգին հերձուածող ըսուած եկեղեցիները, և հոն ինչ ինչ կրօնական գործողութեանց մասնակցին, և ողորմութիւն մըն ալ թողուն, քանի այս կերպով շատ մը նեղութիւններէ ազատելու, և իրենց կաթոլիկութիւնը խաղաղօրէն պահելու համար* (ՍԵՐ. 2)։ 2. *Թէ նոյներուն կրնա՞յ արդեօք ներուիլ ինչ ինչ տօնակատարութեանց համար համակերպիլ Հայ եկեղեցւոյ կարգադրած տօնացոյցին, նկատելով որ այդ տօնացոյցը նոյնինքն Նախկին Հայ սուրբ Հայրերուն ընդունած տօնացոյցն է* (ՍԵՐ. 2)։ *Երկու խնդիրներուն լուծումը տրուած է ստորասական կերպով՝ թէ կրնան, և ընդարձակ պատճառաբանութիւններով և ուսումնասիրութիւններով պաշտպանուած է ստորասական պատասխանը, զորս մենք պիտի չվերլուծենք, այլ միայն ըսենք թէ ամփոփումն է վերոյիշեալ Վահան Հաւատոյ երկասիրութեան, և այն ալ ոչ շատ համառօտ, զի առաջինին լուծումը 182 երես* (ՍԵՐ. 3—185), *և երկրորդինը 70 երես* (ՍԵՐ. 185—256) *կը պարունակէ Սեղբոսեանի կողմէ ներկայուած գրուածին մէջ։ Սեղբոսեան նոյն գրուածին մէջ խոստացեր էր, Հայ պատմութիւն մըն ալ պատրաստել և ներկայել Փրոփականտայի* (ՍԵՐ. VI), *եւ երեք տարի ետքը 1786ին, նոյն Սեղբոսեանի անունով Վենետիկի մէջ հրատարակուեցաւ եռահատոր իտալերէն Հայոց պատմութիւն մը, որուն համար կրնանք ըսել թէ Չամչեանի պատմութեան* (§ 2164) *ուղղութեամբ և պարունակութեամբ կազմուած է։ Միայն թէ ձեւն ու ոճը բոլորովին տարբեր է, եւ պարզ պատմականէ աւելի ջատագովական ընթացք մը ունի, միշտ միևնոյն նպատակի ծառայելով, թէ Հայոց եկեղեցին Հռոմէականէն հեռացած չէ, և անկէ դատապարտուած չէ, և թէ Հայոց եկեղեցւոյն դէմ չարախօսներ՝ ստուգութենէ հեռացած և ճշմարտութիւնը աղաւաղած են։ Այդ աշխատութիւնը վեց մասերու կամ գիրքերու բաժնուած է, որք են. 1. Հայաստանի աշխարհագրութիւնը* (ՍԵՂ. Ա. 1-105)։ *2. Հայաստանի հին և նոր քաղաքական վիճակը* (ՍԵՂ. Ա. 106-273)։ *3. Քրիստոնէութեան Հայաստանի մէջ սկսիլն ու զարգանալը* (ՍԵՂ. Ա. 274-500). *4. Հայ կաթողիկոսներու շարքը* (ՍԵՂ. Բ. 3-315)։ *5. Հայ եկեղեցւոյ ժողովները* (ՍԵՂ. Բ. 316-486)։ *6. Հայ եկեղեցւոյ ծէսն ու սովորութիւնները* (ՍԵՂ. Գ. 3-622)։ *Գործին մէջ ընդարձակ տեղի տրուած է Կալանոսի տեսութիւնները և մեղադրութիւնները հերքելու։ Ինչպէս կը տեսնուի, այդ աշխատութեան մէջ պատմական մասէն զատ, վիճաբանական մաս մըն ալ կայ, ուր Չամչեանի պատմութենէն զատ Վահան Հաւատոյ գիրքն ալ քաղուած է. իսկ անոնցմէ դուրս աւելցուած են պապական կոնդակներէ եւ Փրոփականտայի որոշումներէ զանազան կտորներ։*

**2168**. *Պէտք է ընդունիլ թէ մեծ աշխատութիւն թափած են Վենետիկի Մխիթարեանները, իրենց ընդգրկած ուղղութիւնը պաշտպանելու, և եթէ հնար ըլլար*

տիրապետել տալու։ Իսկ Սեղբոսեան նոյն նպատակով մեծ ծախքերու ենթարկուած է, քան թէ գրական աշխատութիւն ունեցած, զի կրկին կը խոստովանի, թէ ինքն պէտք ունեցած է Նշանաւոր թարգմանիչ մը Հռոմայ երէցին (ՍԵՂ·Ա. XVI), և թէ ինքն է խմբագրութեան և տպագրութեան ծախքերն ընողը, և թէ որչափ ալ գրութիւնք իրեն եղած չըլլայ, ինքը կ'ըստանձնէ անոնց հեղինակութեան պատասխանատուութիւնը (ՍԵՂ· Ա· XVII)։ Այլ թէ ինչ եղաւ այդչափ աշխատութեան արդիւնքը, խորունկ լռութիւն մը կը գտնենք իբր հետեւանք։ Իրաւ գրուածները Հռոմէ չդատապարտուեցան և չմերժուեցան, որովհետեւ Հայութիւնը դէպի հռոմէականութիւն տանելու կը ծառայէին, բայց ընդունելութիւն ալ չգտան, զի Հայութիւն մը պահելու և պաշտպանելու կը միտէին։ Միւս կողմէն Լատիններ և լատինամոլներ չդադրեցան իրենց պահանջկոտ և մոլեռանդ ուղղութիւնը շարունակել, իրենց հետեւողներուն խիղճերը յուզել և միտքերը խանգարել, զանոնք հակազգային գործերու և հակապետական արարքներու մղել, և ազգային պատրիարքարանի պաշտպանողական ջանքերուն և Օսմանեան պետութեան կասկածոտ որոշումներուն հետեւանքներուն ենթարկել։ Հայոց պատրիարքարանին և կաթոլիկամիտ հաատուածին մէջ խնդիրներ եւ միտումներ, գժտութիւններ և հակառակութիւններ դադար չառին։ Իսկ կաթոլիկամիտ հատուածին մէջ Աբբայեանի և Գոլէճեանի տարբերութիւնք երթալով սաստկացաւ, և թող չի տուաւ որ գոնէ հատուածը ինքն իր մէջ խաղաղ վիճակ մը ունենար։ Այսպէս տեւեց և կը տեւէ տակաւին, և նոյնիսկ այս օրեր նոյն խնդիրները կը յուզուին։ Զաքարիա պատրիարքի հետեւած ուղղութեան դառնալով, նա երկրորդ անգամ աթոռ բարձրանալէն ետքը՝ միտքը չփոխեց, բայց ոճը մեղմացուց. կաթոլիկութեան դէմ մըցումը՝ պարզապէս պաշտպանողականի վերածեց, աշխատելով Հայ եկեղեցին և Հայ ազգութիւնը ներքնապէս զօրացնել, կաթոլիկութենէ անկախաբար ուսում ու զարգացում քաջալերել, և ազգայնոց միտքէն հեռացնել կաթոլիկութեան ոյժով և միջոցներով զարգանալու հրապոյրը։

2169. Զաքարիայի պատրիարքութեան առաջին շրջանին մէջ զինքն յուզող խնդիրներէն մէկն ալ Ղուկասի Կաթողիկոսութիւնն էր, որով մինչեւ Էջմիածինի դէմ յայտնի մըցման և դիմադրութեան մղուած էր։ Երբոր աթոռ վերադարձաւ՝ Ղուկասը ճանչնալու կամ չճանչնալու խնդիրը փակուած էր, և այլեւս ետ դառնալ անհնար էր, ուստի կամայ ակամայ անոր համակերպիլ ստիպուած էր, բայց Էջմիածինի անհամակիր զգացումը իր սիրտին մէջ մարած չէր։ Ակնարկեցինք արդէն թէ իւր հակակրութիւնը տարածած էր նաև հանգուցեալ Սիմէոն կաթողիկոսի վրայ, իմացած ըլլալով որ Սիմէոն էր որ Ղուկասը իրեն նախադասած և անոր կաթողիկոսանալը յանձնարարած էր (§ 2153)։ Ուստի աւելի բան մը չկարենալով ընել, և Սիմէոնի կարգադրած տօնացոյցին դէմ սկիզբէն յուզուած դիտողութիւնները պատճառանք ընելով (§ 2127), ազգային ժողով մը գումարեց 1784 յունուար 26'ին (ԴԻԻ· Ա· 8) Ս. Սարգիսի շաբաթ օրը, ի պատրիարքարանիս Սուրբ Աստուածածնի մայր եկեղեցւոջ, ուր ըստ սովորութեան հաւաքուեցան ի բոլորից եկեղեցեաց առաջնորդացն և առհասարակ քահանայք սրբոց եկեղեցեաց, մահտեսիք, եկեղեցպանք, իշխանաւորք և իշխանք և բոլոր ժողովք (ՏՆԱ· 2), և որոշեցին հին տօնացոյցի կիրառութիւնը հաստատել՝ երկու պատճառներով. 1. Վասն սրբոյ եկեղեցւոյս Հայաստանեայց անփոփոխ մնալոյ, և 2. Վասն ստանձնելոյ սրբոյն Հայրապետաց մերոց նորագրեալ տօնացոյցն անայլայլելի պահելոյ, ուր հայրապետաց կարգը կը յիշեն Սարգիս Շնորհալին ալ, որ երբեք տօնացոյցի հետ գործ ունեցած չէ և հայրապետ ալ եղած չէ։ Սակայն կարծես թէ որոշման բուն հեղինակին խիղճն ալ հանդարտ չէր, թէ որոշման իսկական շարժառիթները ասոնք չեն. վասնզի անմիջապէս կ'աւելցնէ. Եթէ ոք ի մեծամեծաց մինչեւ ցփոքրագոյն յայլեւայլ մտս ընթանայցէ, կամ բանիւ արտաբերիցէ, յերանէ մեծամեծս մեղանչելով մեղանչէ (ՏՆԱ· 389)։ Ըստ մեզ տեղն է առածը յիշելու, թէ ամբաստանութիւնը կանխող չքմեղանք, անձամբ

ԱՆԼՈՅԾ ԿԸ ՄՆԱՆ

ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՏՕՆԱՑՈՅՑՆԵՐ

*անձին է մեղադրանք։ Համաձայն տրուած որոշման, հին տօնացոյցը նորէն տպել տըրուեցաւ, արդեամբ և ծախիւք բնակելոց ի մեծն Պոլիս (ՏՆԱ. 4), եւ աւարտեցաւ 1785 օգոստոս 11'ին (ՏՆԱ. 1), և ըստ այնմ ալ սկըսան վարուիլ։ Սիմէոնեան տօնացոյցը 1777'ի տարեմուտէն գործածութեան մտած էր, նոյն իսկ Զաքարիայի հաւանութեամբ (§2128), և եօթը տարիէ ի վեր ամէն կողմ տարածուած էր. ուստի չենք կարծեր թէ նոր որոշմամբ անոր կիրառութիւնը ամէն տեղ և իսպառ խափանուած ըլլայ, և պէտք է ընդունիլ թէ տօնացոյցի մասին խառնակ և տարբեր գործածութիւններ տիրեցին Զաքարիայի պատրիարքութեան ատեն, որչափ ալ ժողովական հրամանով, ուր ուրեք գտանէին տօնացոյց Սիմէոնի, բերէին առ Զաքարիա պատրիարք, որ փութով [illegible] ընկենոյր ի հուր (ՊէՐ. 5)։ Այս կացութիւնը տեւեց եօթը տարի, մինչեւ որ Զաքարիայի մահուընէ ետքը, յաջորդին հրամանով Սիմէոնեան տօնացոյցի կիրառութիւնը հաստատուեցաւ, և անխափան կը շարունակէ մինչեւ ցայսօր։*

**ԱՐՄԱՇԻ ՎԱՆՔԸ**

**2170.** *Ակնարկեցինք Զաքարիայի ուսումնական զարգացման մտադրութիւն դարձուցած ըլլալուն (§ 2168), ինչ որ գլխաւորապէս եկեղեցական դասակարգին համար անհրաժեշտ էր, Հայ հռոմէադաւան եկեղեցականներու հակակշռելու համար։ Արդէն կանուխէն Յակոբ Նալեան և վերջէն Զաքարիա Փօքուզեան պատրիարքներ՝ անձամբ այդ նպատակին ծառայած էին (§ 2121), բայց վերջին անցուդարձեր այդ ձեռնարկն ալ խանգարեցին, ուստի հարկ եղաւ նորէն նոյն նպատակին ոյժ տալ։ Բայց այս անգամ մայրաքաղաքին մէջ պարզ դպրոցական ձեռնարկի մը տեղ, Զաքարիա մտածեց հնաւանդ ոճով վանական և ուսումնական հաստատութիւն մը, կամ հինէն նուիրագործեալ անունով Դպրեվանք մը կազմակերպել, և այդ նպատակին միակ յարմար տեղը Արմաշի Չարխափան սուրբ Աստուածածնի վանքն էր, մայրաքաղաքէ ոչ շատ հեռու, Նիկոմիդիա քաղաքին շրջանակին մէջ։ Արմաշի վանքին հիմնարկութիւնը պատմեցինք ետքը (§ 1639), նոր առիթ չունեցանք անոր վրայ խօսելու, զի վանքն ալ յիշատակաց արժանի կացութիւն մը չունեցաւ, և պարզապէս իբրեւ Նիկոմիդիոյ առաջնորդարան նկատուեցաւ, ուր հարկաւ անընդհատ շարունակութեամբ առաջնորդներ գտնուեցան, թէպէտ ամբողջական շարքը յայտնի չըլլայ։ Արմաշ՝ առաջնորդարանէ զատ հռչակաւոր ուխտատեղի ալ դարձաւ, իբր ազգային բարեպաշտութեան կեդրոն, որ միշտ իրեն համար սրբավայր մը կը փնտռէ. իսկ Ասիոյ առաջակողման և Եւրոպիոյ սահմանակցութեան վիճակները՝ ուրիշ տեղ մը չունէին իրենց ջերմեռանդութեան յագուրդ տալու։ Աւելորդ կը սեպենք Արմաշու առաջնորդներուն մասին մեր կատարած հետազօտութեանց արդիւնքը այստեղ յառաջ բերել, որ աւելի մենագրութեան մը նիւթ պէտք է ըլլայ։ Միայն յիշենք թէ անոր պաշտպանութեան և իբր ուխտատեղի պայծառութեան նպաստողներուն մէջ, Նալեան պատրիարքի անունին ալ կը հանդիպինք, և Զաքարիա Վանեցի, Յարութիւն Կրետացի, Աթանաս Կ-Պոլսեցի, և Պետրոս Ղափանցի եպիսկոպոսներու նման ծանօթ անուններ ալ կը գտնենք առաջնորդաց շարքին մէջ։ Պետրոս Ղափանցին վախճանեցաւ 1784 մարտ 20'ին, Նիկոմիդիա քաղաքը, յառաջացած և գրեթէ զառամած ծերութեան մէջ, իրեն աշակերտ և օգնական ունենալով Յովակիմ եպիսկոպոս մը, բուռն բնաւորութեան՝ բայց և յամառ գործունէութեան տէր անձ մը։ Նիկոմիդացիք Պետրոսի զառամութենէն և Յովակիմի բռնութենէն ձանձրացած՝ նոր առաջնորդ ուզած էին Զաքարիայէ՝ երբ տակաւին կենդանի էր Ղափանցին, և Զաքարիա 1781 փետրուար 17 թուակիր հրովարտակով մը կարգադրած էր Պետրոսի Պանդրմա փոխադրուիլը Յովակիմի հետ, և իւր ձեռնասուններէն Բարթողիմէոս եպիսկոպոսը նշանակած էր Արմաշի և Նիկոմիդիոյ համար։ Բայց Պետրոս չէր մեկնած օգուտ քաղելով անշուշտ մայրաքաղաքին շփոթներէն, և պատրիարքին փոխուելէն։ Զաքարիա պատրիարքութեան վերադառնալէն ետքը չէր ուզած իսկոյն բռնանալ, հաւանաբար տաղտաց Ղափանցիին ծերութիւնը յարգելով։ Մինչեւ որ Պետրոս կը վախճանէր, իսկ Յովակիմ իբր ժառանգա-*

կան իրաւունք Պետրոսի յաջորդութիւնը իւրացնել կ'աշխատէր, կրթնելով խումանական խումբին աղմուկներուն և չահուած պաշտօնեաներու պաշտպանութեան։ Բայց պէտք էր անգամ մը վերջ տալ այդպիսի անտեղի կացութեան, ուստի 1786 յունուար 8 թուակիր նոր և ազդու հրովարտակով զօրացած, Բարթողիմէոս Նիկոմիդիա եկաւ, Ցովակիմը վտարեց, անոր կողմակիցներն ալ չահեցաւ կամ զսպեց, և վերջապէս Արմաշ ու Նիկոմիդիա հանդարտութիւն գտան, հնգամեայ շփոթութիւններէ ետքը։

**ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍ ԿԱՊՈՒՏԻԿԵԱՆ**

**2171**. Բարթողիմէոս՝ Կապուտիկ կամ Կապուտիկեան մականուանեալ կապոյտ աչքերուն համար, Կ-Պոլսեցի էր բնիկ, 1749'ին ծնած, Զաքարիայի աշակերտած, և աստիճանները անկէ առացած, և 1775'ին եպիսկոպոսացած Սիմէոնի ձեռնադրութեամբ, Զաքարիայի ընտրելագոյն աշակերտներէն մին եղած, եւ գրեթէ միշտ անոր հետ միացած և գործակից եղած։ Զաքարիա իւր սիրելի Բարթողիմէոսը կը ղրկէր Արմաշ, յանձնարարելով զայն կատարեալ վանական միաբանութեան եւ ուսումնական հաստատութեան վերածել։ Բայց Արմաշ աւեր ու խանգար էր վերջին պատահարներու պատճառով, որով Բարթողիմէոս, աւելի քան նորոգող, ի հիմանէ շինող փառքը կ'ըլլար, և միանգամայն ձեռնամուխ կը լինէր կազմակերպելու [illegible] կրօնաւորաց [illegible], [illegible], ինչպէս կը խօսի տապանագիրը։ Սակայն դիւրին չեղաւ այդ արդիւնքները իսկոյն իրականացնել։ Նախանձոտ քսուներ գրոյց հանեցին թէ Բարթողիմէոսի շինածը 366 սենեակներով, ամուր պարիսպներով եւ զէնքերով լեցուն դղեակ մըն է։ Քսութիւնն ալ շուտով ընդունուեցաւ, զի Ռուսաց հետ պատերազմին միջոցն էր, և որչափ ալ կառավարական քննութեամբ ստութիւնը յայտնուեցաւ, բայց խափանուած շինուածը շարունակելու համար նոր հրամանագիրի պէտք եղաւ, որուն ստացութիւնը ուշացաւ, եւ հազիւ 1797 սեպտեմբեր 13'ին Խաչվերացի կիրակիին կրցաւ կատարուիլ նորաշէն տաճարին նաւակատիքը։ Բարթողիմէոս երբ նիւթական շէնքին հետամուտ էր, բարոյական շինութեան գործը զանց չէր ըրած, որ իւր վարդապետին մեծ յանձնարարութիւնն էր, և աշակերտաց խումբ մը կազմած էր Արմաշի մէջ, եւ անոնց դաստիարակութեամբ կը զբաղէր։ Արմաշեան աշակերտութեան այս նախընծայ դասակարգէն տասնի չափ անուններ ունինք մեզի հասած, որ օգտակար եղած են աւելի Նիկոմիդիոյ եւ Պրուսայի և շրջակայ վիճակներուն մէջ։

**ԵՓՐԵՄ ԱՁԱՊԱՀԵԱՆ**

**2172**. Երկու օծակից ընկերներուն՝ Ղուկաս կաթողիկոսի և Զաքարիա պատրիարքի՝ (§ 2150) պաշտօնավարութիւնները՝ բաւական երկար եղան, եւ գրեթէ զոյգ վերջացան, զի իրարմէ իբր ինն ամիս տարբերութեամբ վախճանեցան 1799'ին։ Իրենց գործունէութեան մասին՝ ընդհանուր ակնարկներ են աւելի մեր գրելիքները, քան նշանաւոր եղելութիւններ. ուստի անոնց չմտած կ'ուզենք քաղել զանազան աթոռներու և հաստատութիւններու նկատմամբ ժամանակակից տեղեկութիւնները, պատմական զուգընթացութիւնը պահած ըլլալու համար։ Կիլիկիոյ աթոռին պատահարները պատմեցինք մինչեւ Գաբրիէլ Աջապահեանի եղերական մահը (§ 2104)։ Սպանութիւնը տեղի ունեցած էր 1770 սեպտեմբեր 10'ին, եւ շփոթութեանց պատճառով միջոց մը աթոռը պարապ մնացած, մինչեւ որ Աջապահեան Մարկոս քահանայի որդին, և վերջին երեք կաթողիկոսներուն եղբօրորդին՝ Եփրեմ եպիսկոպոս, կրցաւ Ատանայի առաջնորդարանէն գալ և Սիսի մէջ աթոռը գրաւել 1771ին, զի Ատանայէն դարձը՝ Գաբրիէլի սպանութենէն յետ [illegible] տեղի ունեցած է (ՍԻՍ. 219)։ Պատմաճեանէ նշանակուած 1772 թուականը (ՊԱՍ. 22), աւելի քան Եփրեմի կաթողիկոսութեան, պէտք է պատշաճեցնել Եղիազարի [illegible] հաշակուելուն։ Եղիազար ալ Աջապահեան ըսուած է (ՊԱՍ. 22), բայց Ալիշան իւր ճիւղահամարին չէ անցուցած (ՍԻՍ. 219), որով չենք կրնար ճշդել թէ ինչ ազգակցութիւն ունէր Եփրեմի հետ, բայց հաւանաբար Մարկոս քահանայի միւս չորս եղբայրներէն մէկուն որդին էր, և նախորդ երեք կաթողիկոսներուն ուրիշ եղբօրորդի մը։

*Եփրեմ կաթողիկոս՝ Սսոյ Աջապահեան տոհմէն և նոյն տոհմէն եղող կաթողիկոսներուն պատմութիւնը գրած է, այլ հրատարակուած չէ, բացի ոտանաւոր քաղուածի մը կտորէն* (ՍԽՍ. 220-221). *իսկ Ներսէս Դանիէլեան եպիսկոպոսի կողմէն ստացած ձեռագիրնիս* (ԱՋԱ.) *անունները միայն ունի, եւ գործերէն ոչինչ կը պարունակէ։ Պատմաճեանէ կը տեղեկանանք թէ Եղիազար Կ-Պոլիս եկած է* [illegible], *թէ Կիլիկիոյ մէջ երկպառակութիւնք տեղի ունեցած են, և* [illegible] *գտնուած են* [illegible], *իմա Եփրեմեանք և Եղիազարեանք, և թէ Պատմաճեան պատրիարքին ալ* [illegible] *պատճառած են, որովհետև ինքն ալ դիմադրած է Եղիազարի ձգտումներուն, գիտնալով թէ* [illegible] (ՊԱՍ. 22)։ *Պիտի չկարենանք նաև ճշդել թէ ինչպէս վերջացաւ Եղիազարի գրգռած հակաթոռութիւնը, միայն գիտենք թէ Եփրեմի կաթողիկոսութիւնը տեւեց մինչև* 1784, *և ինքն ալ եղերական վախճան ունեցաւ* [illegible] *Սսոյ* (ՍԽՍ. 219)։ *Իսկ սպանութեան կերպը եղած է* [illegible] (ՊԷՐ. 5), *այսինքն Գօզանօղլուներու ցեղապետէն։ Սպանութեան ժամանակը յարմար է դնել* 1784 *տարւոյ յուլիսի վերջերը կամ օգոստոսի սկիզբները, զի սեպտեմբերին սկիզբը մեծ չտալով նոր ընտրութիւն կը կատարուի, որպէսզի չմնայ* [illegible] (Դիւ. Ժ. 327)։

2173. *Եփրեմի յաջորդն ալ* [illegible] *էր, ինչպէս կ'ըսէ տապանագիրը* (ՍԽՍ. 217), *նոյն ազգատոհմէն հինգերորդ մը՝ Ղուկասէ, Միքայէլէ, Գաբրիէլէ եւ Եփրեմէ ետքը։ Ընտրեալն էր Թէոդորոս, որ Կ-Պոլիս կը գտնուէր, չենք գիտեր ի՛նչ ճիւղահամարով կապուած նախորդին հետ, բայց հաւանաբար Եփրեմի հօրեղբօրորդի մը։ Հարկաւ Եղիազար հակաթոռ այլեւս կենդանի չէր, որ աթոռին թեկնածու չեղաւ։ Ընտրութիւնը կատարուեցաւ Կ-Պոլսոյ մէջ՝, զի հոն կը գտնուէր Թէոդորոս, բայց միշտ* [illegible] (Դիւ. Ժ. 325)։ *Նշանակելի պարագայ մըն է կաթողիկոսական օծումին Կ-Պոլսոյ մէջ կատարուիլը։ Այդ բացառութեան պատճառ պէտք է նկատուին՝ Եփրեմի եղերական մահը, Կիլիկիոյ աթոռին մէջ տիրող շփոթութիւնը, և աթոռին տիրանալու համար՝ ամէն պարագաներով զօրացած եւ եկեղեցական ու պետական պայմանները լրացուցած կաթողիկոս մը զրկելու անհրաժեշտութիւնը, եւ ոչ թէ կաթողիկոսութեան տիրանալու համար անզօր ընտրելի մը։ Նշանակութեան արժանի է եւս որ յատուկ մտադրութիւն կը դարձուի օծումն ալ* [illegible] *կատարել, լուր օր մը, Խաչի բարեկենդանին նախընթաց ուրբաթը,* 1784 *սեպտեմբեր* 6'*ին,* [illegible] (Դիւ. Ժ. 327)։ *Կաղզուանցի յիշատակագիրին նշանակած՝ բազմութեան գրոհ տալէն զգուշանալու պատճառը՝ չատ թեթև կ'երեւի մեզի. աւելի ծանր կասկածներ ծանրացած պիտի ըլլան պատրիարքին և ժողովականաց մտքին վրայ։ Որչափ ալ լուր օր մը եւ գաղտնի կերպով, սակայն մաշտոցի ծիսական պահանջներուն յարմարիլ աշխատած են, և կաթողիկոսական օծման համար պահանջուած 12 եպիսկոպոսները պատրաստ չգտնելով, եօթը վարդապետներ զգեստաւորած են՝ հինգ եպիսկոպոսներուն հետ թիւը լրացնելու համար։ Հինգ ներկայ եպիսկոպոսներն եղած են, Սահակ Փառակեցին՝ Էջմիածինի նուիրակ, Աւետիս՝ Երուսաղէմի փոխանորդ, Գէորգ Սսոյ միաբաններէն, Յովհաննէս Սեբաստացի և Յովհաննէս Տրապիզոնցի։ Զաքարիա պատրիարք օծումին նախագահած է, բայց ինքզինքը երկոտասաններուն թիւէն դուրս է համրած։ Արարողութիւնը տեղի ունեցած է Քումքափուի Մայրեկեղեցւոյն մէջ։ Թէոդորոս, որ կը նկարագրուի իբրև* [illegible], *երբեք ու* [illegible] *պարագաներուն դժուարութեան պատճառով. սակայն Զաքարիա և* [illegible] *ստիպած են պնդելով, թէ* [illegible] (Դիւ. Ժ. 326)։ *Շտապով օծումին պէս շտապով ալ Թէոդորոս ճանապայ կը դրուի 12 օր ետքը* (ՊԷՐ. 5), *այսինքն* 1784 *սեպտեմբեր*

**ԹԷՈԴՈՐՈՍ ԱՋԱՊԱՀԵԱՆ**

18'ին։ Իր պաշտօնավարութեան մասին մանրամասն տեղեկութիւն պիտի չկարենանք տալ, գոհանալով միայն պատմագիրին վկայութեամբ, թէ [illegible] ջանու անձին [illegible] նորոգութեան սրբոյ տաճարի, և [illegible] վարդապետ [illegible] վախճանեցաւ 1791'ին (ՍԻՍ. 217)։ Թէոդորոսի մահը ուրիշ պատմութեանց մէջ կը յետաձգուի մինչև 1801, և սպանուած կ'ըսուի Խօզանօղլու բռնապետէն, յօշոտեալ անդամ անդամ, Սիսի պարիսպէն դուրս, գետին կամուրջին վրայ (ՊԷՐ. 38)։ Տարբեր պատմութիւններու մէջէն աւելի ստոյգ կը նկատենք տապանագիրին վկայութիւնը թուականին համար, և 1791'ին և ոչ 1801'ին կը դնենք Թէոդորոսի կաթողիկոսութեան վերջը։ Իսկ մահուան կերպին համար, կրնանք ընդունիլ բռնական սպանութիւնը, երբ զի տապանագիրին մէջ ալ բաց թողուած տող մը (ՍԻՍ. 217) կասկած կը զարթուցանէ, թէ չեն ուզած կամ չեն կրցած բացէն գրել տեղւոյն բռնապետին ոճրագործ արարքը։ Թէոդորոսի յաջորդը եղած է իր եղբօրորդին, Կիրակոս Աջապահեան, որուն գահակալութիւնն ալ պէտք կը զգանք դնել 1791'ին։ Բռնապետներ երբոր կաթողիկոսի մը կեանքին կը դաւաճանէին, արգելք չէին դներ ուրիշի մը յաջորդելուն, նոր որս մը պատրաստ ունենալու դիտմամբ։

**ԱՂԹԱՄԱՐԱՅ ԱԹՈՌ**

**2174**. Աղթամարի աթոռին յաջորդութիւնը չփոթ կը ներկայանայ այդ միջոցին, և դժբախտաբար հեղինակաւոր աղբիւրներ չենք գտներ, խնդիրը լուծելու համար։ Թովմայի մահէն ետքը, որ 1783'ին կը դրուի (§2105), ոմանք կը յիշեն Կարապետ Վանեցի 1783'ին, Մարկոս Շատախցի 1788'ին, Յովհաննէս Սպարկերտցի, անկէ ետքը Թէոդորոս 1792'ին, Միքայէլ Վանեցի 1796'ին, և Կարապետ Շատախցի, զոր կը հասցնեն մինչև 1803'ին (09 ՕՐԱ. 288)։ Հաւաքարանը այդ անուններ կ'անգիտանայ, և 1783'էն 1804 միջոցին համար ունի միայն Միքայէլ Վանեցի՝ յոյժ [illegible], և Կարապետ Վանեցի Դրըմքէսեանց, որ Դանիէլի օծման կը գտնուի (00 ԲԻՋ. 1200)։ Մեր ձեռքը գտնուող վաւերագիրներէն ստուգապէս գիտենք, Կարապետ կաթողիկոսի մը Դանիէլի օծման նախագահելը (ԴԻԻ. Ե. 236), սակայն որևէ մակդիր անուն յիշուած չէ, որ ստուգէինք թէ նոյն ինքն Վանեցին է, թէ ոչ միւս ցուցակին մէջ տեսնուած Շատախցին, զի անոր համեմատ 1788'էն ետքը Վանեցին այլևս չկայ, և 1802'ին Շատախցին կը գտնուի աթոռի վրայ։ Առ այժմ մեզի նախադասելի կ'երևի Հաւաքարանի գրութիւնը, քանի որ չենք տեսած միւս գրութեան նախնական աղբիւրները։ Դիտողութեան արժանի կը սեպենք, որ 1783'էն սկսելով Աղթամարի կաթողիկոսներ տեղական ընտրութեամբ և օծմամբ աթոռ բարձրացած են, և Ղուկաս չէ կրցած Աղթամարի գործերով զբաղիլ, եւ Ջահկեցիի ու Երեւանեցիի ատեն հաստատուած յարաբերութեանց պաշտպան կանգնիլ, և առանց Էջմիածինի հաւանութեան Աղթամարի կաթողիկոս չնստեցնելու պայմանը գործադրել տալ։ Ասոր պատճառ եղած են քաղաքական խառնակութիւնը եւ սահմանակից գաւառներու խռովութիւնը, որով խափանուած է երկու աթոռներուն հետ պայմանադրուած յարաբերութիւնը, որ հազիւ թէ Էջմիածինի կամատէր և Աղթամարի կամակատար կաթողիկոսներու ատեն կրցած էր գայթիգայթ սկզբնաւորութիւն մը ունենալ։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԱԹՈՌ**

**2175**. Երուսաղէմի մէջ 1775'ին յանկարծամահ եղած էր Պօղոս Վանեցի պատրիարքը՝ խռովութեանց միջոցի մը մէջ (§2107), այնպէս որ միաբանութիւնը կանոնաւորապէս հաւաքուելու և ընտրութիւն ընելու պատեհութիւնն ալ չգտաւ, և Կ-Պոլսոյ պատրիարքին և մեծամեծներուն յանձնեց արժանաւորն ընտրել և պետական հաստատութիւնն ալ հոգալ։ Այդ կերպով Երուսաղէմի պատրիարք ընտրուեցաւ Յովակիմ Քառնաքեռցի եպիսկոպոս, որ Կ-Պոլսոյ մէջ Երուսաղէմի փոխանորդ կը գտնուէր։ Եթէ ինքն Յովակիմ աշխատած չէ իր վրայ հրաւիրել ընտրողներուն մտադրութիւնը, գոնէ ասոնք յորդորուած են իրենց մտադրութիւնը դարձնել աչուըներնուն ներքև գտնուող և իրենց ճանչցած մէկու մը վրայ։ Որն որ ըլլայ Յովակիմի ընտրուելուն շարժառիթը, նորընտիրը պետական հաստատութիւն ստացաւ

1775 օգոստոսին, Երուսաղէմ հասաւ նոյեմբեր 5'ին, և միաբանութիւնը իւր գոհունակութիւնը յայտնեց նոյեմբեր 24'ին գրութեամբ (ԱՍՏ. Բ. 107)։ Յովակիմ 18 տարի պաշտօն վարեց մինչև 1793, սակայն խաղաղութիւն չվայելեց։ Առաջին օրեր նեղուեցաւ Լատիններուն ոտնձգութիւններէն, որոնք կը հետապնդէին յափշտակել զմի մասն գերեզմանատան Հայոց, 65 կանգուն երկայն և 37 կանգուն լայն, կամ 2400 քառակուսի կանգուն գետին մը (ԱՍՏ. Բ. 108)։ Լատիններու պահանջկոտութեան փաստ կը կազմէր այնտեղ Լատիններէն ոմանց թաղուած ըլլալը, այն ժամանակէն որ Լատինաց գերեզմանատունը Անմէտ Տէճէնի չէյխէն գրաւուած էր իբր իւր սեփական ագարակը, և Հայեր հիւրասիրութեամբ իրենց գերեզմաննոցը ընդունած էին Լատին մեռեալները։ Երկրորդ փաստ մըն ալ կը քաղէին բնիկ Հայ բնտանիքներէն ոմանց լատինացած ըլլալէն, որոնց մեռելները նոյն մասին մէջն էին (ԱՍՏ. Բ. 110)։ Հայերը քիչ չատ պաշտպանութիւն կը գտնէին Երուսաղէմի դատաւորէն, տեղացի իսլամ ծերերու վկայութեամբ, բայց Լատիններ իրենց կողմը կը շահէին Դամասկոսի կուսակալները, և կը զօրանային Գաղղիական դեսպանատան ազդու միջամտութեամբ, զոր չէր համեր չեզոքացնել Զաքարիայի պատրիարքական ազդեցութիւնը։ Երկու կողմերէն փոխադարձաբար ելեւէջներ տեղի ունեցան, բայց վերջին որոշումը Լատիններուն նպաստաւոր եղաւ, և խնդրի պատճառ տուող գերեզմաննոցի մասը՝ վերջնականապէս Լատիններուն անցաւ 1777'ին, և այսօր ալ անոնց սեփականութիւնը կը մնայ (ԱՍՏ. Բ. 114)։ Լատիններ հետամուտ եղան նաև իրենց սեփականել Բեթղեհէմի գիւղէն դուրս Քառանէց այր կամ Կաթին այր կոչուած մատուռը, որ երեք ազգերու հասարակ էր։ Այս կէտը դատաւորին առեանին առջեւ տրուած ծերերու վկայութեամբ վաւերացաւ, և Լատիններուն ոտնձգութիւնը խափանուեցաւ 1776'ին (ԱՍՏ. Բ. 115)։

**2176**. Յովակիմ ներքին խնդիրներ ալ ունեցաւ աթոռին վարչութեան և ընչից մատակարարութեան և սեփականութեանց պաշտպանութեան մասին, որոց արձագանգը մինչև Կ-Պոլիս հասաւ, և պատրիարքն ու պատրիարքարանն ալ զբաղեցուց։ Զաքարիա ուզելով հիմնական դարման մը հաստատել, կարեւոր նախապատրաստութիւններէ ետքը, հանդերձ ընդհանուր եւ գրեթէ համայն ազգով ժողով մը գումարեց 1791 յունիս 23'ին, Լուսաւորչի պահոց երկուշաբթի օրը, և եօթը յօդուածներով կանոնագիր մը հաստատել տուաւ՝ վասն բարեկարգ կառավարութեան աթոռոյ Երուսաղէմի, առ ի չերծացանելոյ զայն աթոռս սրբոյն ի քամքասանաց (ԱՍՏ. Բ. 115)։ Ասկէց կը տեսնուի, թէ չատ հին է Երուսաղէմի աթոռին մատակարարութեան մասին գանգատը, եւ թէ նոյնպէս հին է Կ-Պոլսոյ աթոռին անոր առջեւն առնելու համար ջանքեր ընելն ու կանոններ հաստատելը։ Անկէ ասդին 120 տարիներ անցած են, եւ դժբախտաբար ոչ գանգատները վերջացած են, և ոչ նոր կանոններ հաստատելու պէտքը դադարած։ Զաքարիայի ձեռքով կազմուած անդրանիկ կանոնագիրին տրամադրութիւններն են՝ 1. Պատրիարքն զմեծ նուիրակն ամենեցուն ինքեան օգնական, ամէն ելեւմուտք անոնց գիտակցութեամբ կատարուի, հասոյթները երկաթ սնտուկի մէջ պահուին, բանալին նազըրներէն մէկուն մօտ մնայ, պատրիարք եւ նազըրներէն մէկը զատ զատ հաշուատետր բռնեն, ծախքերու համար պէտք եղած գումարները գործակալներուն յանձնուին, նազըրներ և գործակալներ միաբաններէն ըլլան, չինութիւններն ալ նազըրներու որոշմամբ կատարուին։ Ասիկայ յայտնապէս տնօրէն ժողովոյ նախատիպ կազմութիւնն է։ 2. Դախանճի կոչուած գործակալը տետրակ ունենայ, առածն ու տուածը գրէ, և առանց իւրաքանչիւր ճիւղի գործակալին գիտութեան մէկու մը բան չտայ։ Այս անունով նշանակուած գործակալը իբր ընդհանուր ծախսարարը կը ներկայացուի։ 3. Առանց նազըրներու հաւանութեան միաբան չընդունուի և միաբան չարտաքսուի։ 4. Ամէն գործակալներ և նուիրակներ նազըրներու հաւանութեամբ անուանուին։ 5. Պատրիարքն զերան և զհասարակն մի՛ որոշեսցէ, այսինքն առանձնաշնորհեալ միաբաններ չըլլան։ 6. Վախճանեալ միաբաններուն ունեցածները

*երբոր Ջուխաճիին կը դառնան, «ոչ ըստ հաճոյից իւրոց, այլ կամօք խորհրդականաց տնօրինէ»: Խորհրդական կոչուածները վերը նշուած բռուածներն են: 7. Պատրիարքը իւր կողմէ բրած ծախքերը, տուած պարգեւները, գանձած կոնդակագրամները և ուրիշ նուէրները, անունով և տեղով նշանակէ, և նագրներու կողմէ «միաբանեան վճռով», և այնպէս կարգադրուի: Պատրիարքը նոյնը պահանջէ գործակալներէն, և «մի՛ ոք ընդդիմասցէ դատաւորէն» (ԱՍՏ. Բ. 116): Այս կանոնները Կ-Պոլսոյ եկեղեցական և աշխարհական մեծամեծներէն կնքուեցան, Երուսաղէմի պատրիարքին և միաբանութեան յորդորականներ ալ գրուեցան, խոստանալով կանոններուն պահպանութեան առթին, «յամենայնի յետևողք և օգնական լինել գործոց աթոռոյն»: Երկու ալ պատգամաւորներ ընտրեցին Երուսաղէմ երթալու և կանոններուն գործադրութեան հսկելու: Առաջին կանոնով յիշուած վեց նազրները, կամ մեր բառով՝ տնօրէն ժողովոյ անդամները, այս անգամ ուղղակի Կ-Պոլսէ նշանակուեցան, Սարգիս, Աւետիք, Զաքարիա, Կարապետ, Պետրոս եպիսկոպոսներ և Մարտիրոս վարդապետ (ԱՍՏ. Բ. 115-117), որ բսել է՝ թէ միաբանութեան երիցագոյնները առնուեցան:*

**2177.** *Ընտրուած պատգամաւորները նշանակուած չեն, բայց հաւանաբար եկեղեցականներ են: Ասոնք Երուսաղէմ հասնելով ամէն բան պարզեցին, միաբանութեան ժողով հաւաքեցին, և կանոններու ընդունելութեան և հպատակութեան գիր առին: Վեց նշանակուած տնօրէններուն գործի ձեռնարկել տալուն, երկաթի սնտուկը հաստատեցին, և բանալին Մարտիրոս վարդապետի տուին իբրև գանձապետի. Պետրոս եպիսկոպոսը հաշուակալ նշանակեցին, գործակալները որոշեցին, և Ջուխաճիին հաշիւը տեսան ու տոմարները կարգադրեցին: Բայց այսչափով խնդիրը չփակուեցաւ, զի «փոքնամ մեծ էր» դրամի պակասութեան կողմէն, և կանոնները դրամ չէին պատրաստեր: Աթոռը պարտքեր ունէր, «զանձնանէլ փոքէկան տարր այլազգեաց» վճարելու միջոցներ չունէր, և յեբերոց դատաստանեան ժամանակին ուխտաւորութիւններ և ուրիշ հասոյթի աղբիւրներ նուազած էին: Տաճկահայերն ալ որչափ և խոստումներ բրած, սակայն իրենք ալ երկրին տագնապներէն կը նեղուէին. ուստի հեռաւոր կողմեր, Ռուսաստանի և Վրաստանի բարեկեցիկ ազգայիններուն դարձուցին աչուրնին, և Ռուսիոյ Կատարինէ կայսրուհւոյն և Վրաց Հերակլ թագաւորին յատուկ գիրեր գրուեցան Յովակիմ պատրիարքի կողմէն. հոգեւորական ընծաներ ալ պատրաստուեցան, և այնպէս յատուկ նուիրակներ ճանպայ հանուեցան այն կողմերուն համար (ԱՍՏ. Բ. 118): Այս գործերը կատարուած ատեն արդէն Յովակիմ պատրիարք ծերացած էր, և ըստ աւանդութեան նաև «աջն ի փեսանէլոյ» զրկուած էին, և քիչ ետքը 1793 սեպտեմբեր 25ին, Վարագայ խաչին կիրակի օրը կեանքը կնքեց: Վշտալի և տագնապալի եղած էր Յովակիմի բոլոր կեանքը, մահուանէ ետքն ալ տագնապները չդադարեցան, զի թէպէտ երկուշաբթի յուղարկաւորութեան կարգը կատարուեցաւ, բայց «ըստ աւելորդեան» Ս. Փրկչի վանքը թաղելու համար դժուարութիւններ հանուեցան, և արգելքներ դրուեցան դատաւորին կողմէն, և «հողէն խորոցն հանել զմեռ նորա», ինն քսակ դրամ վճարելով, և այնպէս թաղումը կատարեցին (ԱՍՏ. Բ. 119-120):*

**2178.** *Յովակիմի մահուընէ ետքը միաբանութիւնը ինքն ձեռնարկեց յաջորդի ընտրութեան, իբրզի աչքին առջեւն ունէր յարմար ընտրելի մը, Պետրոս Եւդոկիացի եպիսկոպոսը, զոր իբր հաշուակալ յիշեցինք վերև (§ 2177), որ և միանգամայն Ս. Յակոբայ փակակալ կամ լուսարարապետն էր: Միաբանութիւնը՝ Սարգիս Կուզիկեան եպիսկոպոսի գլխաւորութեամբ, և ծերունազարդ Մարտիրոս վարդապետին ազդեցութեամբ, որ բանգէտ և տաճկագէտ, և աթոռին գործերուն հմուտ և տեղեակ, և քանի պատրիարքներ տեսած, և ամէնուն յարգը գրաւած միաբանն էր, Պետրոսը բռնադատեց ընտրութեան հաւանիլ, և պաշտօնական գիրերը պատրաստելով Մելքոն վարդապետի ձեռքով Կ-Պոլիս ղրկեց: Զաքարիա և*

ՅՈՎԱԿԻՄ ՔԱՆԱՔԵՌՑԻ

ՊԵՏՐՈՍ ԵՒԴՈԿԻԱՑԻ

մեծամեծներ շուտով հաւանեցան, պետական հաստատութիւնը ստացան, և հրովարտակը յղեցին պատրիարքին ձեռքով, և 1794 փետրուար 14'ին, Տեառնընդառաջի տօնին կատարուեցաւ Պետրոսի աթոռ նստելուն հանդէսը: Առաջին գործերէն մին եղաւ կանուխ գրուած կանոնագիրին (§ 2176) վերստին հաստատութիւնը, և Պետրոս ինքն կանխեց և Կ-Պոլսոյ պատրիարքարանէն խնդրեց վեց խորհրդականները որոշել և լրացնել, զի ինքն պատրիարք եղած էր, ոմանք վախճանած էին, Մարտիրոս վարդապետ ալ անկարացած էր, բայց յիշուած չենք գտներ թէ որոնք եղան նոր կազմութեան մէջ մտնողները: Պետրոս ալ զանազան նեղութիւններ կրեց դրամական վճարմանց պատճառով, Ս. Յարութեան Տաճիկ դռնապաններուն, Դամասկոսի կուսակալին, Յոպպէի մաքսապետին, և Երուսաղէմացի այլազգիներուն՝ կերպկերպ քմահաճոյ պահանջմանց երեսէն: Ինչչափ ալ Պետրոս թախանձանօք Զաքարիայի դիմեց, որ յատուկ հրամանագիր հանել տայ —— է ղըղէլ ղողէրաթուրինը նոյն (ԱՍՏ. Բ. 123), սակայն տուգանքներէ բոլորովին զերծ մնալ անհնար եղաւ: Յատուկ ծախքի և մտահոգութեան պատճառ տուաւ Զմիւռնացի ուխտաւորներու նաւի մը՝ Սիւրիական Տրիպոլիսի առջեւ խորտակուիլը, որուն մէջ 8 հոգի խեղդուեցան, իսկ 52 ազատուածները Երուսաղէմ հասցնելու համար Պետրոս յատուկ մարդ ղրկեց, ժողվել ու բերել տուաւ, և մինչեւ իսկ տեղերնին դարձնելու համար ամէն պէտքերնին հոգաց: Ս. Յարութեան տաճարը այրելու համար իսլամներու թշնամութեամբ կրակ ձգուիլն ալ նոր ծախքի դուռ բացաւ, զի թէպէտ հրդեհը շուտով մարեցաւ, բայց հինցած փայտէ դռներուն տեղ, երկաթէ նոր դուռեր դնել հարկ եղաւ երեք ազգերու համերաշխ ծախքով:

**ԳԱՂՂԻԱՑԻՈՑ ԱՐՇԱՒԷԼԸ**

**2179**. Աւելի տաղնապալի եղաւ՝ Գաղղիացւոց Եգիպտական արշաւանքին հետեւանքը: Եգիպտոս Օսմանեան նահանգ եղած էր 1517'ին, և սուլտան Սէլիմ խալիֆայութեան բարձրացած էր, այսինքն է իսլամութեան կրօնապետ ճանչցուած, իբր յաջորդ իրենց մարգարէին: Եգիպտոս անկէ ետքն ալ կէս առանձնաշնորհեալ դիրք մը պահեց, և իր կուսակալներ աւելի ազատ վարչութիւն և՝ աւելի ընդարձակ նախաձեռնութիւն պահեցին, տեղացւոց և օտարաց վրայ հաւասարապէս բռնութիւններ և հարստահարութիւններ ընելով: Վերջին ատեններ Ապտիւլ-Համիտի սուլտանութեան օրով, Եգիպտոսի Շէյխէլպէլէտը կամ մեծ կուսակալը՝ Իսմայիլ պէյ մըն էր, որուն 1790'ին յաջորդեց Օսման պէյ Թապէլ, ապիկար մէկ մը, որ բոլոր գործերը յանձնեց Իպրահիմ պէյ և Մուրատ պէյ երկու բռնապետներու, որոնք բնիկները կեղեքելէ և կողոպտելէ ետքը՝ օտարականներու վրայ սկսան բռնանալ: Այս պարագան Եւրոպայի մտադրութիւնը հրաւիրեց Եգիպտոսի վրայ: Եւրոպայի դերիշխանը Նաբոլէոն Պօնաբարթն էր (Napoleon Bonaparte), որ 1797 հոկտեմբեր 17'ի Քամբօֆորմիօյի (Campoformio) դաշնագիրով՝ Գաղղիոյ աշխարհակալութիւնը ընդարձակած՝ և Աւստրիոյ կայսրութիւնը ընկճած՝ և դէպ Արեւելք տարածուելով Յոնիական կղզիներն ալ իւրացուցած էր: Անկէ ծագեցաւ իր մէջ Եգիպտոսի աշխարհակալութեան միտքը, և նպատակը ծածկելով մեծ պատրաստութիւններ կատարել սկսաւ Թուլոնի (Toulon) նաւահանգիստը, ուսկից 1798 մայիս 19'ին հարիւր առագաստանաւերու տորմիղ մը կը մեկնէր 10,000 նաւազներով և 40,000 զինուորներով, գիտնականներու գունդով մը և 400 բեռնբարձ նաւերու հետեւորդով (ՌԻՄ. 1): Ճանպուն վրայ յունիս 12'ին Մալթա կղզին գրաւեց Ասպետներուն ձեռքէն, և 19'ին նորէն ճանպայ ելլելով, յուլիս 1'ին Եգիպտոս հասաւ, 2'ին բանակը ցամաք հանեց, և 3'ին Աղեքսանդրիա մտաւ (ՌԻՄ. 32): Ասորիք և Պաղեստին ցնցեցան ու դղրդեցան, Խաչակիրներու յիշատակները միտքերու մէջ արթնցան, Այլազգիներու միտքերը գրգռուեցան, և քրիստոնէից դէմ ատելութիւնը զայրացաւ, և կեղեքումներու նոր դուռ բացուեցաւ: Երուսաղէմի մէջ ալ պաշտօնական անձեր և տեղացի մեծամեծներ խորհուրդներ կազմեցին, երեք ազգերու վրայ բռնանալ սկսան, նախ պատահմամբ գտնուող զէնքերը փնտռեցին և առին, վանքերու բանալիները ձեռք անցու-

ցին, պաշտպանութեան խումբեր դրին, և զինեալ խուժամուժ ամբոխն անզուսպ և անարգել մտանէին և ելանէին, և ամէն տեսակ կեղեքում և յափշտակութիւն համարձակ կը գործէին, յաճախակի կոտորածներ ալ բսպառնալով (ԱԶՏ. Բ. 127)։ Երեք ազգերուն փոխանորդ ու թարգման վարդապետները ձերբակալելով բանտարկեցին՝ իբրեւ պատանդներ, բայց Եգիպտոսի արշաւանքին ստոյգ չլինելուն զրոյցը, միտքերը պահ մը հանդարտեցուց, և կարծես խաղաղութիւն վերահաստատուեցաւ։ Երուսաղէմի մէջ գործուածներուն նմանները միւս քաղաքներուն մէջ ալ կը կրկնուէին, առաւելապէս Յոպպէի մէջ։ Շուտով վերջացաւ անհիմն զրոյցէն յառաջ եկած հանդարտութիւնը, և նորէն սկսան հարստահարական բռնութիւնները, բարդուեցան ստիպաւ պահանջուած գումարները, և երեք ազգերու եկեղեցականներէն 170 հոգի Ս. Յարութեան տաճարին մէջ բանտարկեցին, ուր շատեր հիւանդացան։ Ուրիշ եկեղեցիներն ալ փակուեցան, և ամէն տեսակ բռնութիւններ չատցան, մեռելները թաղելու իսկ արգելքներ դնելու չափ (ԱԶՏ. Բ. 128)։

**2180.** Նաբոլէոն Աղեքսանդրիայէն Գահիրէի վրայ ուղղեց իր արշաւանքը, ուր մտաւ յուլիս 24'ին։ Թէպէտ օգոստոս 1'ին իր նաւատորմը կորսնցուց Աբուքիրի առջեւ, Անգղիացի ծովակալ Նելսընի հնարագիտութեամբ, բայց Եգիպտոսի տիրապետութիւնը ընդարձակեց և կարգաւորեց։ Մենք պիտի չհետեւինք Գաղիական տիրապետութեան և Նաբոլէոնի Եգիպտոսի մէջ ըրած կարգադրութեանց, և հիմնած գիտական հաստատութեանց. բաւական ըլլայ աւելցնել, թէ անոր յաջողութեանց հակահարուածը կը զգացուէր Պաղեստինի և Ասորիքի քրիստոնեաներուն վրայ, և յատկապէս Հայոց պատրիարքին և միաբանութեան վրայ, մինչեւ իսկ ասոնք յորդորելու որ Երուսաղէմը թողուն և բոլորովին հեռանան։ Սակայն Կ-Պոլսոյ կողմէ միշտ յորդորներ կը հասնէին չթողուլ և չտանել զմատնութիւն ազգին (ԱԶՏ. Բ. 130)։ Եգիպտոսի արշաւանքը Օսմանեան տէրութիւնն ալ կը ստիպէր Գաղղիացիներու դէմ, որոնք կը կանխէին նոր արշաւանք մը կազմակերպել Ասորիքի կողմը, զի տակաւին 30,000 զինուորի բանակ մը կը գտնուէր Նաբոլէոնի ձեռքը, և կը յուսար անով Եգիպտոսն ալ պահել, և Ասորիքն ալ գրաւել։ Սոյն արշաւանքը սկսաւ 1799 փետրուար 1'ին. 9'ին մտան Արիշ աւանը, և Նաբոլէոնի ալ անձամբ հասնելէն ետքը՝ գրաւուեցաւ Արիշ բերդը 19'ին, ուսկից յաղթականներ անցան Գազա, և մարտ 1'ին բանակեցան Էզտուտի հանդէպ, որ է հին Ազովտոսը։ Ռամլէ և Լիտտա դիմադրութիւն չըրին, Եաֆա կամ Յոպպէ պաշարմամբ առնուեցաւ 7'ին, և աւարի և կոտորածի մատնուեցաւ։ Երբ Պաղեստինի ամէն կողմէն՝ դիմադրութեան պատրաստութիւններ սկսան, Նաբոլէոն ժողովուրդը հանդարտեցնելու համար յայտարարութիւններ ղրկեց Նապլուս, Երուսաղէմ և ուրիշ քաղաքներ, թէ ինքն միտք չունի անոնց դէմ գործել, միայն Մէմլուքներուն դէմ է կռիւը, և ոչ տեղացիներուն (ՌԽՄ. 108)։ Բայց այս կոչը Երուսաղէմացիները չհանդարտեցուց, որոնք միշտ քրիստոնէից դէմ կասկածոտ, արդէն փետրուար 14/25'էն, 2000 հոգիէ աւելի բազմութիւն մը հաւաքած և բանտարկած էին Ս. Յարութեան տաճարին մէջ, և հոն ալ հանդարտ չթողլով կը նեղէին և կը նախատէին, և մինչեւ իսկ պատուհաններէն ներս զէնք կը պարպէին (ԱԶՏ. Բ. 130)։ Նաբոլէոնի դիտումն էր Աքիան գրաւել, հիներուն Պտղոմայիսը, Եւրոպացիներէն Ակրայ Ս. Յովհաննէս կոչուած բերդաքաղաքը, ուր ամրացած էր Ճէզար փաշա կուսակալը՝ Հայֆայէ ալ ետ քաշուելով։ Ժամանակահը բաւական կորուստ պատճառած էր Գաղղիացւոց, Ապտուլլահ փաշա ալ Օսմանեան գունդերով անոնց դէմ կու գար, Նաբոլէոն փութաց Աքիան պաշարել մարտ 7/18'ին (ՌԽՄ. 111)։ Այստեղ զինուց բախտը դարձաւ. Աքիան զօրաւոր ընդդիմութիւն ըրաւ. Ճէզար փաշա արդէն իր բոլոր ոյժը կեդրոնացուցած էր հոն։ Անգղիացիք ծովէն իրեն օգնութիւններ կը հասցնէին, Ֆիլիբբօ (Philippeaux) անուն Գաղղիացի մը քաղաքին ամրութեան գործերուն կը հսկէր, Նաբոլէոնի պզտիկ տորմիղին բերած զէնքերը Անգղիական տորմի-

ղէն կը գրաւուէին, և ճէզարի կը յանձնուէին։ Նաբոլէոնի ուժերը սպառեցան, թէ ամուր քաղաքին դէմ յարձակումներով, և թէ եռուէն եկող Տաճկական գունդերուն դէմ պատերազմներով, և երկու ամիսէ աւելի Աքիայի դիմաց ատեն անցընելէն ետքը, մայիս 10/21'ին, ուրիշ կարեւորագոյն գործի պատրուակով, պաշարումը վերուց, և եկած ճամբէն ետ դառնալու սկսաւ, առանց նշանաւոր դժուարութեան հանդիպելու (ՈՒՄ. 127)։ Բայց Յոպպէի վրայ նորէն զայրոյթի բռնութիւնները թափեց (ԱՍՏ. Բ. 131), անկէ Եգիպտոս դարձաւ, և յունիս 14'ին Գահիրէ մտաւ, յաղթական փառաւորութեամբ՝ Ասորիքի մէջ ունեցած յաջողութեանց յիշատակներով։ Մենք պէտք չունինք այլեւս Նաբոլէոնի գործերուն հետեւիլ, որ Օսմանեան գունդերուն վրայ յուլիս 25'ին Ապուքիրի մէջ նոր յաղթութիւն մըն ալ տանելէն ետքը, 1799 օգոստոս 24'ին Եգիպտոսէ մեկնեցաւ, նորէն Եւրոպիոյ պատերազմներուն դառնալու համար։

**ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ**

2181. Մենք այս պատմական յիշատակները օգտակար սեպեցինք յառաջ բերել, որպէսզի յստակ և կատարեալ գաղափար մը տանք այն նեղութեանց, զորս այդ առթիւ կրեց Երուսաղէմի աթոռը, պատերազմի արհաւիրքներու մէջ պաշարուած, և տեղացող մոլեգնութեան մատնուած։ Ասոնք՝ քրիստոնեայ գունդերու յարձակումներուն ներքեւ, ամէն քրիստոնեայ անխտիր անոնց բարեկամ և օգնական, և լըփէօ և բոնափնոց —— հոստափոլէցօ խուբէանց սեպելով (ԱՍՏ. Բ. 130), ամէն միջոց օրինաւոր կը կարծէին քրիստոնեաները՝ և մանաւանդ վանքերը նեղելու և կողոպտելու, կեղեքելու և տանջելու։ Ոչ միայն այլազգիներէ, այլեւ արշաւող քրիստոնեաներէ ալ նեղուեցաւ Երուսաղէմի աթոռը, զի Յոպպէի վրայ երկու անգամ կատարուած բռնութեանց կարգին, Հայերուն ալ տուներն ու մթերանոցները այրուեցան, վանք ու վանատուն մնասուեցան, և յափշտակութիւններէ զատ 100 քսակի ալ տուգանք առնուեցաւ (ԱՍՏ. Բ. 131)։ Ուէմլէի մէջ եղող միաբաններուն Յոպպէ փախչելուն վրայ, լեռնական տեղացիներ՝ վանքին վրայ յարձակելով, կողոպտեցին և աւերեցին, և մինչեւ իսկ չինուածին երկաթները քակելով տարին։ Նոյն աւարառուք Երուսաղէմի վանքին վրայ ալ յարձակեցան, Ս. Փրկիչ եկեղեցին քարուքանդ ըրին, ձիթատանն ու պարտէզները կորտեցին, մայր վանքին բակերը իբրեւ բանակետղ գործածեցին, և ամէն տեսակ մնասներ հասուցին (ԱՍՏ. Բ. 132)։ Օսմանեան զօրավարներ ալ, իբրեւ պատերազմի ծախք՝ բռնի գումարներ կորզեցին, և բոլոր վանականք և քաղաքին Հայազգիք Նօստուղէցան ի զօրօ—Բէնէ և անկան ի կարօղօ—Բէնէ, և Պետրոս պատրիարք յոգւոց հանելով կը հառաչէր, և մահուան կը փափաքէր, Բէ-- րէցօ էրանէ հանելով Դոեւլօց որէ է Տէր Ննջէ-ցէն (ԱՍՏ. Բ. 133)։ Այնչափ յուսաբեկ էր Պետրոսի կացութիւնը այդ տագնապներու մէջ, որ աթոռին մէջ ալ չկրնալով մնալ, Յոպպէ իջաւ Օսմանեան զօրավար Քէօր մականուանեալ միականի Եուսուֆ փաշայի մօտ, որպէսզի թեթեւութիւն ստանայ վանքէն պահանջուած պատերազմի ծախուց գումարին վրայ։ Պետրոս Յոպպէ հասաւ 1800 մայիս 11'ին, այլ տագնապէն և նեղութիւններէն հոն հիւանդացաւ, և քիչ օր ետքը յունիս 18'ին վախճանեցաւ, և Յոպպէի հասարակաց գերեզմանոցը թաղուեցաւ, ուսկից 1837'ին ոսկրները Յոպպէի եկեղեցիին գաւիթը փոխադրուած են (ԱՍՏ. Բ. 134)։ Այս կերպով ուրիշ տագնապներուն վրայ աւելցաւ աթոռի պարապութիւնն ալ, որ միջոց մըն ալ երկարեցաւ, մինչեւ որ ընտրութիւն կատարուէր և յանձնառու մէկ մը գտնուէր։ Պետրոս Եւդոկիացի պատրիարքին իբրեւ մեծ արժանիք պէտք է արձանագրենք, եթէ այդչափ տառապանքներու և արկածներու մէջ կրցաւ գոնէ աթոռի կացութիւնը անվտանգ պահպանել։

**ԿԱԹՈԼԻԿՆԵՐՈՒ ԳՈՐԾԵՐ**

2182. Պատմական յիշատակները լրացնելու համար համառօտիւ քաղենք ԺԸ դարու վերջին քառորդին մէջ՝ Հայ հռոմէական հասատութեանց կացութիւնն ալ, որոնք թէեւ մտադրութեան արժանի պարագաներ չեն ներկայեր, այլ կարեւոր են ապագայ եղելութեանց կապակցութիւնը պահելու հա-

մար։ Լիբանանի մէջ Կիլիկիոյ անունով կազմուած կաթողիկոսութիւնը հանդարտ օրեր անցուց Բարսեղ Պետրոս Դ Աւգատեանի օրով, որուն 1780'ին ընտրուած ըլլալը յիշեցինք (§ 2112), և ապրեցաւ մինչեւ 1788 փետրուար 5։ Անտոնեան միաբանութեան անդամակից էր, և կաթողիկոսութեան և միաբանութեան հաշտ յարաբերութիւնները պահեց (ԱՆՏ.)։ Իրեն հետեւող եղաւ իր յաջորդը Գրիգոր Պետրոս Ե Քիւբէլեանը, բնիկ Քիլիսցի, Ատանայի անունով եպիսկոպոս ձեռնադրուած Միքայէլէ, որ 1788 մայիս 11'ին ընտրուեցաւ՝ իրմով մէկտեղ երեք եպիսկոպոսներու ժողովէն, և պապական հաստատութիւն ստացաւ 1788 դեկտեմբեր 15'ին (ԱՂՔ. Ա. 34)։ Սա եւս ժամանակ մը Անտոնեանց աշակերտութեան մէջ գտնուած կ'ըսուի, և իր ընթացքն ալ Անտոնեանց հանդէպ հաշտ եղաւ իր բովանդակ պաշտօնավարութեան ժամանակ, որ երկարեցաւ մինչեւ 1812 յունիս 17 (ԱՂՔ. Ա. 37)։ Բայց իր մեծ ջանքն եղաւ Զըմմառի աթոռին և անոր ժառանգաւորաց վարժարանին ընդարձակուելուն և զարգանալուն աշխատիլ, նորանոր շինութիւններով և ներքին բարեկարգութիւններով զարգացնել, այնպէս որ Զըմմառեան աշակերտութիւնը զայն իբր իրեն հիմնադիրը կը պատուէ (ԱՂՔ. Ա. 36)։ Յիշած ենք թէ Լիբանանի աթոռը շատ կ'աշխատէր իր իրաւասութիւնը ընդարձակել բոլոր հռոմէադաւան Հայոց վրայ, բայց վերջին ատեններ այլեւս ետ կեցաւ այդ ճիգերէ, Հռոմի կողմէ գտած յամառ ընդդիմութեան առջեւ, որ կը նախընտրէր հետեւիլ Կ-Պոլիս նստող Լատին եպիսկոպոսներուն կամքին, որոնք օգտակար և շահաբեր կը գտնէին իրենց իրաւասութեան ներքեւ ունենալ Հայ կաթոլիկ տարրը։ Միւս կողմէն Հայութեան կերպարանին պահպանութիւնն ալ՝ հրապուրիչ ըլլալով հռոմէականութեան տարածուելուն, վերջին ատեններ Հռոմ սկսած էր Կ-Պոլսոյ Լատին եպիսկոպոսին մօտ հայածէս եպիսկոպոս մը աւելցնել իբր փոխանորդ, կամ իտալերէն կոչմամբ՝ Վիքէր (Vicario)։ Սոյն միջոցին այդ պաշտօնին վրայ կը գտնուէր Սահակ Սօֆեալեան, 1784'ին յաջորդած Անտոն Մըրըլեան եպիսկոպոսին (ՀԱՍ. 523)։ Այսպէս Թուրքիոյ Հայ կաթոլիկներ, երկու իրաւասութեանց վրայ բաշխուած կը գտնուէին, Կիլիկիա, Կապադովկիա, Ասորիք և Միջագետք Լիբանանի կաթողիկոսին կը հպատակէին, իսկ Փոքր-Ասիա և Մեծ-Հայք Կ-Պոլսոյ Լատին եպիսկոպոսին։ Ըստ այսմ Փոքր-Հայք երկուքին վրայ բաժնուած կ'ըլլար, և երկու իրաւասութեանց մէջ սահմաններու վէճեր կը գրգռէր։ Պէտք չէ մոռցնել, թէ այդ իրաւասութիւններ և բաժանումներ, միայն իրենց մէջ և կամ Հռոմի առջեւ ոյժ ունէին, իսկ պետական տեսակէտէն գոյութեան իրաւունք իսկ չունէին, քանի որ հռոմէադաւան կաթողիկոսն ու եպիսկոպոսները ճանչցուած և հաստատուած չէին, և պետական օրէնքին առջեւ կաթոլիկներ՝ բացարձակապէս Հայ պատրիարքարանի հպատակ և Հայոց պատրիարքին ենթարկեալ անհատներ կը նկատուէին, ինչ որ առիթ կու տար այն խնդիրներու, որոնց վրայ ընդարձակօրէն խօսեցանք (§ 2163)։

**ԱՆՏՈՆԵԱՆՑ ԳՈՐԾԵՐ**

**2183.** Անտոնեանք սոյն միջոցին մէջ զանազան ձեռնարկներու կը հետեւէին, նպատակ ունենալով ընդարձակել իրենց անշշուկ գործունէութիւնը ինպաստ հռոմէականութեան։ Պետրոս Եղիազարեան Մամպրոյ եպիսկոպոս և Անտոնեան միաբան, նախաձեռնութիւն առաւ Լիբանանի Անտոնեանց վանքին մէջ իր թեմականներուն համար յատուկ վարժարանական ճիւղ մը հաստատել։ Ուրիշ Անտոնեան միաբան մը, Պետրոս Փիրիմեան, Կ-Պոլսոյ Լատին եպիսկոպոսին հետ բանակցութեամբ, նմանօրինակ ձեռնարկի մը ոյժ կու տար յօգուտ Կարնեցի տղայոց։ Հռոմի վանքին մէջ ալ (§ 2065), ձեռնարկուած էր Անտոնեան միաբաններէն ուսումնական անդամներ հասցնել, սակայն բոլոր այդ ճիգեր տեւական արդիւնքներ չունեցան։ Եղիազարեանի փափաքը անձնական ձեռնարկ մնաց, և իր մահով վերջացաւ 1787'ին։ Լատին եպիսկոպոսի հետ եղած կարգադրութիւնը, սկզբնաւորութիւն մնաց՝ առանց շարունակութեան։ Հռոմի վանքին ուսումնական ձեռնարկն ալ ընդմիջեցաւ Գաղղիա-

*կան արշաւանքներուն պատճառով, որք Իտալիան տակնուվրայ ըրին, և 1798'ին Հռոմն ալ ազատ հանրապետութեան վերածեցին, և եկեղեցական ինչքերու գրաւման և եկեղեցականներու զինուորագրութեան օրէնքները հաստատեցին։ Թէպէտեւ Օսմանեան հպատակներ և անոնց ստացութիւններ գրաւումէ ազատ մնացին սուլտան Սէլիմ Գ կայսեր հովանաւորութեամբ, այլ դրամական տուրքերէ չկրցան ազատուիլ, որով ուրիշ ծախքերու չկրցան բաւական ըլլալ։ Այդ ամէն անցքերուն մէջ Հռոմի վանքին և ստացութեանց և անձանց պաշտպանութեան մէջ մեծապէս արդիւնաւոր եղաւ Աթանաս վարդապետ Սարաֆեան, 1795'ին եպիսկոպոս ձեռնադրուած, որ 1782'էն մինչեւ 1815 Հռոմի վանահայրութիւնը վարեց, և ամէն տեսակ արկածներու դէմ տոկաց, և ճարտար կերպերով վտանգներու դէմ մաքառեցաւ (ԱՆՏ.)։ Մխիթարեանց երկու ճիւղերուն, թէ Վենետիկի (§ 2109), և թէ Թրիէստի (§ 2111) միաբաններուն գործունէութիւնը՝ հասուցած կը գտնուինք մինչեւ ԺԹ դարուն վերջերը, որով այստեղ նոր աւելցնելիք կէտ մը չենք ունենար։ Այսպէս մասնաւոր ճիւղաւորմանց մասին ամփոփ տեղեկութիւններ տալէ ետքը, դառնանք երկու մեծ կեդրոններու՝ Կ-Պոլսոյ և Էջմիածինի անցքերը պատմել։*

**2184.** *Զաքարիայի պատրիարքութեան գործերէն վերջին անգամ յիշեցինք Սիմէոնեան տօնացոյցի մասին ըրածները (§ 2040), և Արմաշի վանքին համար ունեցած հոգածութիւնը (§ 2169)։*

ՋԻՆՈՒՈՐ ԵՒ ՏՈՒՐՔ

*Բաւական աշխատութեան առիթ տուաւ նաեւ Աւստրիոյ և Ռուսիոյ դէմ միանգամայն՝ 1787'ին Օսմանեանց բացած պատերազմը, Շուետաց և Լեհաց և Անգղիացւոց օգնութեան վստահանալով, որոնք սակայն չիրականացան (ԺՈՒ. 360)։ Երբոր Օսմանեանց վիճակը ծանրացաւ, եպարքոս Եուսուֆ փաշա մտածեց՝ քրիստոնեայ տարրէն ալ օգտուիլ պատերազմական ոյժերու համար, բան մը, որ է յօքտընից ու էր էդէօւլ և ու տէւէօւլ (Դ.Ի.Ի. Ժ. 334)։ Յունաց և Հայոց պատրիարքարանէն պահանջեց, որ առաջինը 2000 և երկրորդը 1000 այր դատէրատմէօն տան տարուէ տարի, Հայերը ցամաքի վրայ, և Յոյները նաւերու մէջ ծառայեցնելու համար։ Պատրիարքներ և մեծամեծներ վրդովուեցան, աղաչանքի և պաղատանքի դիմեցին, բայց ուրիշ յաջողութիւն չունեցան, բայց եթէ թիւերը նուազեցնել, Յոյները 1800'ի և Հայերը 500'ի, և նոյնչափ այր հօօր տուին տէրութեան չորս տարի չարունակ, պատերազմին տեւողութեան միջոցին։ Իսկ չորս տարիներէ ետքը անձերու տեղ հաֆօսյանէէն ճէօրճօ հէնէօհօրէօրօց, տըրանա հէնէօ հօղօր հայէ, նըմանալէօ և Յօնէ բըօ տանէ հօղօրէ (Դ.Ի.Ի. Ժ. 334)։ Թէպէտ որոշակի նշանակուած չենք գտներ, բայց այդ պարագայէն սկսած կը կարծենք, քրիստոնէից վրայ ծանրացող գետելը սօթէրէէ կոչուած զինուորական տուրքին սկզբնաւորութիւնը։ Եուսուֆ եպարքոսը այսչափով ալ չգոհացաւ, այլ ոչ-իսլամները ուրիշ ծանրութեան մըն ալ ենթարկեց, որ տարուէ տարի Յոյները 5000, Հայերը 4000 և Հրէաները 3000 օէէօ կամ քաշ արծաթ մատակարարեն կառավարութեան է տղօրանօ տըրանօյ, փոխարէն փողերանոցէն գինը ստանալու պայմանով, տըրամ տօան ֆօրօ հօղօօվ։ Արծաթի հանքեր չունէին քրիստոնեաները, որ պահանջուած սակը վճարեն, և պէտք եղաւ որ տուներէն ու եկեղեցիներէն բոլոր արծաթեղէնները հաւաքեն, նաեւ բռնադատութեան միջոցով, այնպէս որ, ու չօրէմէ, կը գրէ յիշատակագիրը, էշէէւ չանբէղ մ օրճանբէ չօխէւ յէկէղէցէօ (Դ.Ի.Ի. Ժ. 336-337)։ Զաքարիա յատուկ ֆօրմօլօրօյ ժողով մը կարգեց, Ոսկերիչ Գրիգորի գլխաւորութեամբ, թէ արծաթը հաւաքելու, և թէ անոնց տեսակն ու ստուգանը ճշդելու պաշտօնով։ Ինքն պատրիարքն ալ ամէնայն առօօր էրբօյր է Վէղէր խան, և անդ նօտէօւլ յօրդօրէր, և օտէղանօտ բէրէւ կու տար տուներէն, և եւս օրտան օրմօբ ֆօօօ յէկէղէցէօ (Դ.Ի.Ի. Ժ. 336)։ Ով գիտէ որչափ թանկագին յիշատակներ ոչնչացան այդ առթիւ, որ բարեբախտաբար չորս տարիէ աւելի չտեւեց, և դադարեցաւ հաշտութեան դաշինքներով, որ կնքուեցան Աւստրիոյ հետ, 1791 օգոստոս 4'ին, և 1792 յունուար 9'ին Ռուսիոյ հետ (ԺՈՒ. 364)։ Այդ չորեքամեայ միջոցին կէսերուն, 1789 ապրիլ 7'ին սուլտան Ապտիւլ-Համիտ մեռաւ,*

և եղբօրորդին Սէլիմ Գ գահ բարձրացաւ, բայց իրողութիւնները միևնոյն կերպով շարունակեցին մինչև հաշտութեանց կնքուիլը (ԺՈՒ. 361)։

**2185.** Մեծ տագնապը անցնելէն ետքը, հազիւ կրցաւ Զաքարիա ընթացք տալ իր ուրիշ մի ձգտումին, որ էր յատուկ շինութիւններով իր անունը փառաւորել։ Իրեն անունն ու յիշատակը յաւէրժացնող գլխաւոր շինութիւնը Վոսփորի վրայ Քուրուչէշմէ գիւղի եկեղեցին է, ուր ինքը ամառնային բնակութիւն ալ ունէր։

ԶԱՔԱՐԻԱ ՇԻՆԱՐԱՐ

Եկեղեցին Ս. Նշան կոչուած էր, բայց յետոյ սովորաբար Ս. Խաչ անունով յիշուեցաւ, որուն շինութեան Զաքարիա իր իսկ քսակէն 18,000 մարչիլ նուիրեց, և խաչափայտի նշանաւոր մասունքով մըն ալ օժտեց (ԴԻԻ. Փ. 341), և շինութիւնը փութացուց, և օծումը կատարեց 1798 փետրուար 28'ին (01 ՕՐԱ. 157), մեծպահոց Տնտեսի կիրակիին։ Քումքաբուի Մայրեկեղեցւոյ չրջափակն ալ պարիսպով պատեց, և հրդեհներէ պաշտպանելու համար միայուն ջրհան հաստատեց, ջրհանկիրներու խումբով մը, և պատրաստ ջուրի ընդարձակ աւազանով մը, իր քսակէն ալ 20,000 դահեկան սահմանելով ծախքին համար։ Մայրաքաղաքին մէջ հէօ-նտօց էրէօ- յօրէ հաստատեց կ'ըսէ տապանագիրը (ԴԻԻ. Թ. 347), կամ թէ էրէօ- հէօ-նտօնօց շինուեցան և յարդարուեցան իր նախաձեռնութեամբ, ուր են այժմ Նարլըքաբուի Ս. Յովհաննէս և Բերայի Ս. Յարութիւն եկեղեցիները։ Այդ բարեգործական հաստատութեանց համար Զաքարիայի ձեռնտուն էր Մկրտիչ Միրիճանեան, Շնորհք ամիրայ կոչուած, որ Բերայինին հիմնադիրն եղաւ, իսկ Նարլըքաբուինը նորոգեց, զի մինչև 1751 կը համնին անոր զոյութեան յիշատակները։ (ԱՐԼ. 6514)։ Զաքարիա բարեգործականներէն ետքը մտադրութիւն դարձուց դպրոցական հաստատութեանց, ինչպէս արդէն պատմեցինք (§ 2121), և իր պատրիարքութեան առջի տարիներուն մէջ սկսած ջանքերը, որոնք պահ մը թուլցած էին իր պաշտօնանկութեամբ (§ 2157), և վրայ եկող պատերազմական տագնապներով (§ 2184), կրկին ձեռք առաւ իր վերջին տարիներուն մէջ, և անոնց աւելի տեւական ձեւ մր տուաւ, այնպէս որ իրաւամբ կրնանք Զաքարիայի վերագրել, վերջին դարերու ազգային կրթական կամ ճարտարական զարգացման մէջ յառաջ բեր ունեցած ըլլալու պարծանքը (01 ՕՐԱ. 158)։ Մայրաքաղաքէն դուրս ալ Զաքարիայի շինարար ջանքերուն արդիւնքներն եղան գլխաւոր քաղաքներու մէջ եկեղեցիներու և վանքերու և վարժարաններու նորոգութիւնները կամ վերաշինութիւնները, որոնց արտօնութիւնները ինքն կը ստանար կառավարութենէն, ծախուցը կ'օգնէր քաջալերելով և մասնակցելով, և գործադրութիւնները գլուխ կը հանէր իր աշակերտներով։ Այսպէս վերաշինուեցան Եւդոկիոյ երեք եկեղեցիները Յակոբոս եպիսկոպոսի հսկողութեամբ, Պրուսայի եկեղեցին ու առաջնորդարանը Պօղոս եպիսկոպոսի ջանքով, նոյնպէս Ակն քաղաքի և թեմերուն զանազան եկեղեցիները, Ադրիանուպոլսոյ եկեղեցին, Մարսուանի վանքը, և ուրիշներ։ Զաքարիայի շինարար արդիւնքները պսակելու համար պակսեցաւ միայն Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ եկեղեցւոյ վերաշինութիւնը։ Կոլոտի 1733'ին շինած տաճարը (§ 1967), միայն 38 տարի կեանք ունեցաւ և հրոյ ճարակ եղաւ 1771 փետրուար 7'ին, Պասմաճեանի պատրիարքութեան օրով, և միայն մէջի տարաչէնն ճաց, և դժբախտաբար այլ այնուհետեւ ու էդէ ընտրչինելու (ՊԱՍ. 22)։ Մեզի ալ անբացատրելի կը մնայ, թէ ինչու Զաքարիա իր մեծ հեղինակութեամբ չկրցաւ վերաշինել այդ կարևոր եկեղեցին, մայրաքաղաքի Հայ եկեղեցիներուն անդրանիկը, որոյ տեառնընէանն արտաքսեալէց հաստալանօթ լինէր, յամարան արէակէդ և է յմերան ըրտասեալոյց էդէրընէանն՝ է ճայօնէայ յառէրակըն, որ կը ցուցնէ թէ քարուկիր միացորդը կը շարունակէր ժողովրդական բարեպաշտութեան ծառայել։ Յիշատակագիրը կը գրէ, թէ այս ամենայն լինէր յաղագս անմիաբանութեան և երկպառակութեան ժողովրդոց և մանաւանդ էշխանաց տեղւոյն. իսկ իբր երկպառակութեան պատճառ կը ցուցնէ, թէ շէանչս տաճարէն յանէլտակէալ էրրոցաւորէէն (ՍՐԴ.), զոր մենք անբաւական բացատրութիւն կը նկատենք, վասնզի վերաշինու-

*թիւնը հաստյթը կ'աւելցնէր։ Աւելի հաւանական կը կարծենք, թէ Ղալաթիոյ և Բերայի կողմերը ազդեցութիւն ունէին կաթոլիկութեան յարողները, և անոնք աշխատած են չինութիւնը յետաձգել տալ, յուսալով թերևս իրենք առջև անցնիլ և իրենց սեփականել զայն դեսպանատանց միջամտութեամբ։ Այդ դարձուածներու հանդէպ Զաքարիա ալ կրնար գործը չմղել, անակնկալ միջադէպներու առիթ տուած չըլլալու համար, թէ ոչ իրեն համար չատ դիւրին պիտի ըլլար եկեղեցպան իշխաններու հանած դժուարութիւնները լուծել և հարթել։*

**2186**. *Զաքարիայի գովանի արդիւնքները իրաւամբ կը բարձրացնեն իւր կարողութիւնները և ձիրքերը,*

ԶԱՔԱՐԻԱՅԻ ԲՆՈՅԹԸ

*մինչ իւր բնաւորութեան մասին պակաս չեն մեղադրողներ, վերագրելով խրոխտ ամբարտաւանութեան ոգի մը, խառն արտաքնայարդար ունայնասիրութեան հետ։ Մենք ալ չենք արդարացներ կաթողիկոսական խնդիրին մէջ բռնած ուղղութիւնը, թէպէտ խառն էին իւր աթոռին արժանապատուութեան պահանջներն ալ, բայց չենք ալ կրնար համաձայնիլ ինչինչ աւելորդ դիտողութիւններու։ Գրուած է, թէ էր ինքն ծանրակաց և քաղցրահայեաց և յոյժ պատուական, թէ չէր մօտենար հասարակաց և գռեհկաց և համայն ժողովրդականաց, թէ միայն ազնուաց և հարուստաց էր տեսանելին, թէ ի քայլելն և ի յի հեծեալ երթալն՝ գլուխն ի յետս թեքեալ ընթանայր, և կարծէին զորս օտնելով, այնպէս որ իբրեւ արքայական շինեալ էր մի էր (ՍՐԳ.)։ Ասոնց մէջ եթէ ձեւակերպութեանց սէր մըն ալ ենթադրենք, բարոյական մեղադրանքի կէտ մը չենք նշմարեր, քանի որ գիտենք թէ բուռն կերպով ժողովուրդը պաշտպանելու և կարօտեալց օգնելու հետամուտ էր։ Իւր կերպարանն ալ կը մեղադրեն, թէ այլանդակ իմն ցոյց առնելով, յերեսն մեղմոտ և ճերդոտ և երկայնահասակ էր (ՍՐԳ.)։ Բայց ընդհակառակն կը պատմուի, թէ այնչափ վեհ և փառաւոր կերպարան մը ունէր, որ Խոմա սուլտանուհին, զոր անգամ մը առիթ ունեցանք յիշել (§ 2156), անոր համբաւը լսելով, ուզած է անձամբ ստուգել, և Բուչէչմէէ դառնալուն օրն ու ժամը իմանալով, ի կողմն ծովուն նորեալ Օհնիկի մեծ նաւակով անցնիլը դիտած, և հիացեալ ընդ այլ հեղակերպ տեսիլ նորա, գոված է ասելով, մաշալլահ, Ալլահն էմանէթ. և մինչև իսկ ետեւէն առաքեաց զընծայն իւր տանն ի Պատրիարքարանն (ԴԻԻ. Ժ. 285)։ Հետեւաբար այլանդակ իմն եղած ըսելու տեղի չմնար։ Իսկ խրոխտ վարմունքին մասին ալ հակառակ վկայութիւն կու տայ Պասմաճեանը, թէ Զաքարիա, իւրով պատրիարքական և եպիսկոպոսական կարգօք, յառնէր ի վերայ ոտից և առնէր աղօթարկութիւնս և զմտաւորականութիւնս (ՊԱՍ. 33), որ բնաւ խրոխտ ամբարտաւանութեան փաստ մը չէ, և չարդարացներ ուրիշներուն ըսածը, թէ չինեէնէ ու շարժէր, այլ յոյլոց ձեռօքն շարժեալ մնէր (ՍՐԳ.)։ Աւելի արդարացի չերեւիր միւս մեղադրանքն ալ, թէ ժողովէր արար զբազում գիտուն անձինս, և առաք ի Պոլիս ու Բուրսայ զբանգէտ վարդապետս (ՍՐԳ.), զի եղելութիւն մըն է՝ գիտուն և բանգէտ վարդապետներ հասցնելու համար անձնապէս աշխատած, և իրապէս հասուցած ըլլալը (§ 2121)։ Եթէ խնդիրը ծայրագոյն նուիրակին Սահակայ՝ Թաղիմատար տան հեռացուելուն համար է (ՍՐԳ.), այս այն Սահակ Փառակեցին է, որ Էջմիածինի ընտրողական ժողովէն դուրս հանուած էր իւր ըմբոստ վարմունքին համար (§ 2149), և Զաքարիայի հետ ալ ունեցած վիճաբանութեան միջոցին համարձակած էր պատրիարքը ապտակել (01 ՕՐԱ. 156)։ Հեռացուելուն հրամանն ալ Ղուկաս կաթողիկոսէ բղխած է, որ եղածը լսելով փութացած է Սահակը Զմիւռնիա փոխադրել, և տեղը Մինաս եպիսկոպոսը Կ-Պոլսոյ նուիրակութեան ղրկել։ Իսկ միւս հեռացուածին՝ Թրակացի Յարութիւն աստուածիմաստ առնն և Երուսաղէմի նուիրակին համար (ՍՐԳ.), որոշ տեղեկութիւն չունինք, այլ հաւանական է անտեղի գործ մըն ալ անոր կողմէ կատարուած ըլլալը։ Զաքարիայի ըրածը՝ առաւելն պատրիարքութեան թեկնածու և կուսակցութիւններ կազմող եպիսկոպոսներու ասպարէզ տուած չըլլալն է։*

**2187**. *Կ'երեւի չատ հին եղած է Կ-Պոլիս գտնուող եպիսկոպոսներու մէջ երկարատեւ պատրիարքութիւն ընողներու*

*դէմ զգացուած հակակրութիւնը։ Զաքարիա ալ նոյն կացութեան մէջ գտնուած է,*

**ԶԱՔԱՐԻԱՅԻ ՄԱՀԸ**

*զի տասնևհինգ ամ, երեք ամիս և տասնևմէկ օր պատրիարքութիւն ըրած կ'ըսուի* (ՍՐԳ.), *իւր նախորդներուն բոլորէն աւելի, և գրեթէ Կոլոտի հաւասար։ Սակայն տրուած չափը առաջին պատրիարքութենէն, 1773 նոյեմբեր 29'էն սկսելով հաշուուած է* (§ 2119), *և միջանկեալ պաշտօնանկութեան տասն ամիսները զեղչուած չեն* (§ 2160), *թէ ոչ բուն պաշտօնավարութիւնը, 24 տարի և հինգուկէս ամիս եղած կ'ըլլայ։ Զաքարիայի ազդեցիկ և ձեռներէց ձիրքերուն պիտի վերագրենք անշուշտ, եթէ կրցաւ այնչափ ատե՛ն աթոռի վրայ մնալ խառնակ և չփոթ պարագաներու մէջ։ Տարիքն ալ արդէն լրացած էր, զի շուրջ* 1720'*ին ծնած ըլլալով* (§ 2118), *գրեթէ ութսնամեայ մը եղած էր, երբ դժնդակ հիւանդութիւն մըն ալ ունեցաւ, որ ինքնահան բժշկաց եղանակաւ առէ* (Դիի. ժ. 342), *և ուրիշներէ լուծմամբ որովայնին կը բացատրուի* (ՍՐԳ.)։ *Հիւանդութիւնը սկսաւ* 1799 *փետրուարի մէջ, այնպիսի սաստիկ կերպով, մինչ զի յաւուրս պասեքին ոչ եկեր հաց և ոչ եարբ, և բազմադարման դեղօրէից ալ բազմահմուտ բժիշկներէն օգուտ մը չտեսնելով, հոգին աւանդեց* 1799 *մարտ* 11'*ին, մեծպահոց երկրորդ ուրբաթ օրը, առաւօտեան ժամ* 3'*ին, և յաջորդ շաբաթ օրը մեծահանդէս թաղում կատարուեցաւ Մայրեկեղեցւոյ մէջ։ Նախագահ հանդիսադիրն եղաւ Դանիէլ Սուրմառեցի եպիսկոպոս, Էջմիածինի նուիրակ, հանգուցեալոյն աշակերտներէն Յովհաննէս և Պետրոս եպիսկոպոսներու ընկերակցութեամբ, և բազմաթիւ վարդապետներու ու անթիւ քահանաներու մասնակցութեամբ* (Դիի. ժ. 343)։ *Մարմինը Մայրեկեղեցիէն թափորով Քումքաբուի ծովեզերքը կ'իջեցնեն, և նաւով Պալաթ(?)* *Քուրուչէշմէ կը հանեն, և նաւամատոյցէն նորէն թափոր կազմելով կը տանին իւրաշէն եկեղեցին, զոր տարի մը առաջ օծած էր* (§ 2185), *և նորէն կարգ կատարելով, եկեղեցւոյ հարաւակողմը կը թաղեն, ուր տակաւին կը մնայ գերեզմանը փառաւոր տապանագիրով* (Դիի. ժ. 347)։ *Զաքարիայի վախճանը մեծպահքի մէջ տեղի ունեցած ըլլալով, երբ խորանները փակ են, բացառիկ կարգադրութեամբ բոլոր մայրաքաղաքի եկեղեցիները երեք օր բաց պատարագ մատուցին, այսինքն կիրակի, երկուշաբթի և երեքշաբթի օրերը, իսկ Մայրեկեղեցին բաց պատարագը շարունակեց* 40 *օր* (Դիի. ժ. 343), *որ է ըսել ամբողջ Մեծպահքը մինչև Նոր կիրակի։ Այդպիսի պատուաւոր յիշատակութիւն մը անօրինակ կը կարծենք եկեղեցական տարեգրութեանց մէջ, և զայն իբր փաստ կը նկատենք Զաքարիայի վայելած յարգանքին և գնահատման։ Արդէն Ազգասէր կոչումը իբր մակդիր անուն սեփականուած էր Զաքարիայի, և այդ մասին յիշատակագիրին ըսելը, թէ կոչեցաւ ազգասէր վասն այն, չէ թէ ինքն զազգն սիրէր, այլ ազգն զինքն սիրէր* (ՍՐԳ.), *մեր կարծիքով գրողին միտքին հակառակը կը հաստատէ, և Զաքարիայի զազգն սիրելը կը հաւաստէ։ Վասնզի անհնար է որ ազգը կամ ժողովուրդը մէկը սիրէ, եթէ նա առաջուընէ զինքն սիրած, իրեն համար աշխատած, և իրեն երախտաւոր եղած չըլլայ։ Անոնք որ Զաքարիայի յիշատակին աննպաստ ակնարկներ ունին, անձնապէս անկէ օգուտ չստացած անձեր եղած պիտի ըլլան, և այս կարգին մէջ կը դասենք Սարաֆ-Յովհաննէսեան Սարգիս դպիրն ալ՝ որ սիրած է արձագանգ ըլլալ Զաքարիայի հակակիրներուն։*

**2188.** *Զաքարիայի անունին արատ չենք սեպեր իւր թողած մեծահարուստ կարողութիւնն ալ, զի այն*

**ԶԱՔԱՐԻԱՅԻ ԿՏԱԿԸ**

*ժամանակներ, նաև առանց զօշաքաղութեան, հնար էր եկեղեցականաց, մանաւանդ բարձրաստիճան եկեղեցականաց, դրամի տէր դառնալ, ինչպէս որ պատմութեան կարգին ալ տեսնուեցան անոնց բազմաթիւ օրինակները։ Ընդհակառակն Զաքարիայի գովեստի գլուխ մը պէտք է նկատուի, որ իւր կարողութիւնը բոլոր բարեգործական նպատակներու սահմանեց, և անտեղի կիրառութեանց դուռ չբացաւ։ Իրեն ժառանգութենէն* 30,000 *մարչիլ կամ դահեկան պետութեանն ետ,* 20,000 *ալ իրեն յաջորդող պատրիարքին ետ, և մնացած* 92,000

*դահեկանը զանազան նպաստներու յատկա-ցուցած էր, կտակակատար նշանակելով Սի-մէոն Տէր-Մովսէսեան, Զօպան Հովսէփեան, Յովհաննէս Տագէսեան, Յովհաննէս Լիմոն-ճեան և Յակոբ Կիւլլապեան ամիրաները։ Այս գումարին մէջ համրուեցան Քուրու-չէշմէի եկեղեցւոյն 18,000 և Մայրեկեղեց-ւոյն 20,000 նպաստները, որոնք իրմէ առջը վերջնապէս կարգադրուեցան, իսկ մնացեալ գումարը պիտի բաշխուէր հետեւեալ կեր-պով։ Տուրքի և պարտքի համար բանտարկ-ուածներուն ազատման 5000, անտէր մեռ-եալներու թաղումի ծախքերուն 5000, տնանկ աղքատներու 1500, մօրը հոգւոյն տարեկան երկու հոգեհանգիստ ընելու հա-մար Էջմիածինի միաբանութեան 5000, այրի երէցկիններուն աղջիկները ամուսնացնելու 2500, դպրատուններուն 1500, Հիւանդա-նոցին 3500, իսկ մնացեալ 10,000'ին տե-ղերը չեն նշանակուած։ Այս գումարէն զատ Մայրեկեղեցւոյ կտակած է ամբողջ ծանրա-գին զգեստ մը 35,000 դահեկանի արժողու-թեամբ։*

**2189.** *Թաղումին երրորդ օրը երեքշաբթի մարտ 15'ին յաջորդի ընտրութեան համար, եպիսկոպոսներու և քա-հանաներու, իշխաններու և էսնաֆներու ժողովը Մայրեկեղեցին գումար-ուեցաւ։ Ընտրելի առաջարկուեցան, Դա-նիէլ եպիսկոպոս՝ Էջմիածինի նուիրակը, և Յովհաննէս ու Պետրոս եպիսկոպոսներ Զա-քարիայի աշակերտներէն։ Ընտրութիւնը կայացաւ Դանիէլի վրայ, հանրագիրը պատ-րաստուեցաւ (ԴԻԻ.Ժ.346) և պետական հաս-տատութեամբ Դանիէլ պատրիարք աթոռ բարձրացաւ մարտ 17'ին (ՇԱՀ. Ա. 233)։ Դա-նիէլ Սուրմառեցի էր լինիկ, համանուն գա-ւառին մէջ Սուրմառի կամ Սուրմալու կամ Սիւրմէլի աւանէն, որ սահմանակից է Պա-յազիտի, և թերեւս ասկէ կամ Պայազիտ վերաբնակեալ ըլլալէն Պայազիտցի ալ կոչ-ուած է (ՁԱՄ. Բ. 141)։ Իր նախընթացը պատմուած չենք գտներ, և բնական կեր-պով կ'ենթադրենք Մայրաթոռի աշակեր-տած, և այնտեղ մինչեւ եպիսկոպոսութիւն բարձրացած ըլլալը Ղուկասի օրով։ Ինքն առաջին անգամ գործի վրայ կը տեսնուի, երբ 1796'ին Ղուկասէ կը ղրկուի Զմիւռ-նիոյ առաջնորդութեան և նուիրակութեան, սակայն այնտեղ հակառակութեանց կը հան-դիպի, այնպէս որ կաթողիկոսը կը պար-տաւորուի չպնդել, երբոր Զաքարիայի ալ ջանքերը անօգուտ կը դառնան։ Մարտիրոս Կեսարացի եպիսկոպոս Զմիւռնիա կ'երթայ, և Դանիէլ Կ-Պոլիս կը դառնայ 1797 փե-տրրուար 1'ին։ Զաքարիա պատրիարք Նո-խոտեոց գըն գուլմադըմը գանիա (ՊէՐ. 6), ժո-ղովուրդը չահիլ չկրնալուն համար. և Դա-նիէլ փութաց մեկնիլ Ռումէլի, իր նոր նուիրակական վիճակը, առանց գարունի բացուելուն սպասելու։ Այնտեղի պաշտօ-նավարութիւնը յաջող եղաւ, և 1799'ին սկիզբները Կ-Պոլիս եկաւ (01 ՕՐԱ. 165), Մայրաթոռ դառնալու դիտաւորութեամբ։ Զաքարիա տկարացած էր արդէն, և Դա-նիէլ՝ ալը խօճէմալըրը և գօձէլէ վորուն, մըն-գանըն և չընդ կերդարանօ (ՊէՐ. 5), Կ-Պոլ-սեցւոց համակրութիւնը գրաւեց, որոնք կամաւ անոր մեկնիլը ուշացուցին, մինչեւ որ քիչ առջը Զաքարիա վախճանեցաւ, և քանի մը օրէն Դանիէլ յաջորդելու կոչուե-ցաւ։ Դանիէլ Էջմիածինի ջերմեռանդ և Զա-քարիայի հալածուկասեան և հակասիմէոն-եան զգացումներէն ազատ, իր առաջին գործն ըրաւ տօնացոյցի տարբերութեամբ կաթողիկոսութեան և պատրիարքութեան մէջ հաստատուած խտիրը վերցնել (§ 2169), և ամէն կողմ հրամաններ ղրկեց, որ հին տօնացոյցի կիրառութիւնը դադրեցնեն, և Սիմէոնեան տօնացոյցին միայն հետեւին, որ ընդհանրացած էր արեւելեան գաւառ-ներու կողմը, և չփոթ գործածութեանց պատճառ էր արեւմտեան կամ Տաճկահայա-ստակ վիճակներու մէջ։ Այսպէս միանգամ ընդմիշտ փակուեցաւ տօնացոյցի խնդիրը, և այլեւս այդ մասին գրոյց կամ դիտողու-թիւն տեղի չունեցաւ։*

**2190.** *Բարեպաշտեհ յաջողութիւն մը փառաւորեց Դանիէլի պատրիարքութեան սկզբնաւորութիւնը։ Յի-շեցինք արդէն թէ ինչպէս տարիներէ իվեր աւերակ կը մնար Ղալաթիոյ Ս. Լուսաւորիչ հրկիզեալ եկեղեցին, և նոյն ինքն Զաքարիա՝ ձեռներէց և ազդեցիկ պատ-*

ԴԱՆԻԷԼ ՊԱՏՐԻԱՐՔ

ՂԱԼԱԹԻՈՅ ԵԿԵՂԵՑԻՆ

*րիարքը չէր յաջողած անոր վերաշինութեան արտօնութիւնն ստանալ և գործին ձեռնարկել* (§ 2185)։ *Դանիէլ ալ կ'երևի թէ դիմում ըրած էր իւր պատրիարքութեան բակիզբը, բայց տակաւին սպասած արտօնութիւնը կը յապաղէր, և յատուկ արգելք մը և ձեռքի տակէն խարդաւանանք մը զայն կը խափանէր, ինչ որ ժողովուրդին մէջ մեծ գրգռութեան առիթ կ'ըլլար։ Բայց վերջապէս* [illegible] (ՍՐԳ. և ԿՈՂ. 114), *և հրապարակային ցոյցի դիմեցին։ Անոնց հետ միացան* [illegible], *և դիմեցին Քումքաբուի պատրիարքարանը, անմիջական շինութիւնը պահանջելով, և սպառնալով՝* [illegible]։ *Պատրիարքը հազիւ կրցաւ ամբոխը հանդարտեցնել, յանձն առնելով իրենց հետ Ղալաթիա գալ և* [illegible]։ *Իրօք ալ նոյնժամայն անցաւ Ղալաթիա, և օրն էր չաբաթ,* 1799 *սեպտեմբեր* 17։ *Բայց Պատրիարքին հետ Ղալաթիա հասաւ* [illegible]։ *Անշուշտ պատրիարքական դիմումներուն յապաղեալ պատասխանն էր, որ հայճեպ կերպով կը տրուէր՝ երբոր ժողովրդական յուզման և սպառնական չփոթի լուրը կ'առնուէր։ Ցիշենք թէ Նաբոլէոնի Եգիպտական արշաւանքին օրերն էին* (§2180), *և Օսմանեան բանակին Գաղղիական գունդերէն Ապուքիրի մէջ կրած պարտութեան գոյժն ալ նոյն օրերուն Կ-Պոլիս կը հասնէր* (ԺՈՒ. 366)։ *Հրամանին հասնելուն յաջորդ օրը, սեպտեմբեր* 18 *Վարագայ խաչի բարեկենդանի կիրակին, Ղալաթիա կու գային պետական էշ-* [illegible] *Արիֆ Աղա, և Հայազգի ճարտարապետ Մինաս Գալֆա, և տեղւոյն վրայ շինութեան չափերը կը հաստատէին, և երկուշաբթի սեպտեմբեր* 19'*ին, նախ ինքն Դանիէլ պատրիարք* [illegible]*, հիմերուն պեղումը կը սկսէր, և ժողովուրդը եռանդեան գործին վրայ կը թափուէր, և* [illegible]*, այսինքն* 56 *օրէն, նոյն* 1799 *տարւոյ նոյեմբեր* 13'*ին, Ցիսնակաց բարեկենդանի նախընթաց կիրակին, Պատրիարքը եկեղեցւոյն օծման տօնախմբութիւնը կը կատարէր* (ՍՐԳ. և ԿՈՂ. 115), *Զաքարիայի աշակերտներէն Յովհաննէս և Պետրոս և Յակոբոս եպիսկոպոսներու ընկերակցութեամբ* (ՊԵՐ. 8)։ *Այս շինուածն է, որ դեռ այսօր կանգուն կը մնայ։ Շինուածը կը նկարագրուի,* [illegible] (ՍՐԳ. և ԿՈՂ. 115)։ *Որչափ ալ շինուածին նիւթերը պատրաստ եղած, և ժողովուրդը խմբովին ցերեկ ու գիշեր շինութեան աշխատած ենթադրենք, տակաւին մեզի անհնարին կ'երևի 56 օրուան մէջ Ղալաթիոյ երեքխորանեան կամ եռամասնեայ եկեղեցւոյն շինութեան վերջանալը. և պէտք է ենթադրել, թէ շինութեան վերիվերոյ աւարտումը բաւական սեպուած է օծման համար, և հետզհետէ շարունակուած են ներքին յարդարումները և զարդերը։*

**ԷՋՄԻԱԾԻՆԻ ՏԱԳՆԱՊՆԵՐԸ**

**2191.** *Այստեղ կ'ընդհատենք Կ-Պոլսոյ պատրիարքութեան գործերը, վասնզի եկեղեցւոյն օծումէն հազիւ ամիսուկէս ետքը տեղի կ'ունենար Ղուկաս կաթողիկոսի վախճանը, և մենք տակաւին չենք խօսած անոր գործունէութեան և արդիւնաւորութեան վրայ։ Վերջին անգամ պատմեցինք Ղուկասի կաթողիկոսութեան Տաճկահայոց կողմէն ընդունուիլը, և անոր պաշտօնական և արտաքին ձեւակերպութիւններով գործը ստանձնելը* (§ 2158)։ *Իսկ անկէ ետքը էջմիածինէ դուրս տեղի ունեցած անցուդարձերով զբաղեցանք, որովհետև գրեթէ ընդհատուած էին մասնաւոր աթոռներուն Մայր աթոռոյ հետ յարաբերութիւնները, և մենք ալ կապակցութիւններ չունէինք պատմութիւնը զուգընթաց քալցնելու։ Ուստի պարտաւորեալ ենք պիտի դառնանք, և յատուկ կերպով Մայրաթոռոյ անցքերով պիտի զբաղինք։ Այդ ընդհատման կամ կղզիացման պատճառ եղած է երկրին, այսինքն է Պարսկական Հայաստանին մէջ տիրապետող քաղաքական խռովութիւնը, զոր աւելի յարմար է բոլորովին անիշխանութիւն և տիրող պետութեան մը գործնականապէս անգոյութիւն անուանել, զի Պարսկաստան դադրած էր կանոնաւոր տէրութիւն մը ըլլալէ։*

*Ամէն գաւառ ու նահանգ իրեն յատուկ աւատապետ խանը ունէր, որ բացարձակ տէրն էր, և սեփական յարաբերութիւններ կը պահէր և ազիկամի բռնութիւններ կը գործէր։ Անոնք իրարու հետ ալ կը պատերազմէին և իրարու ձեռքէ գաւառներ կը գրաւէին, և տիրապետութիւննին յաղթութեամբ կ՚ընդարձակէին, կամ պարտութեամբ կ՚ամփոփէին։ Ասոնցմէ մէկն ալ Երեւանի խանութիւնն էր, որուն ձեռքին ներքեւ կը հեծէր Էջմիածինի Մայրաթոռը։ Հիւսէյին-Ալի, Երեւանի նշանաւոր խանը մեռած էր Սիմէոնի վերջին օրերը տեղի ունեցած ապստամբներու վրայ* (§ 2138)*, և իրեն յաջորդած էր որդին Ղուլամ-Ալի խան, բայց* 1785 *գարունին Երեւանի մեծամեծները զայն սպաննեցին, և յաջորդ հաչակեցին անոր եղբայրը Մահմատ խանը՝* 12 *տարեկան տղան, իրեն կին տալով ղնեցոյն այրէ կէնն խանին Որմոյ, և զայն խնամակալութեան ճանչնալով, միատեղ բերած ներքինիի մը հետ, այր քանաւոր և գործօնեայ* (ԴԻԻ. Ա. 9)*։ Շամտին աղա, Քուրդ ցեղապետը և Ղուլամի ու Մահմատի քեռին, ուզեց ինքն ձեռք անցընել խնամակալութիւնը, բայց Ղուկաս կաթողիկոս Եմուտ ի մէջ նոցին, և հաւաքեալ հանդարտեցոյց, և պատրաստուած պատերազմը խափանեց։ Հիւսէյինի ժամանակ զօրաւոր՝ իսկ յետոյ զրկուած պաշտօնեաներէն՝ Այվազ և Մուզանը Քասըմ պէկեր ալ զինու զօրութեամբ դիմադրութիւն կազմեցին և երկիրը չփոթութեան մատնեցին, գիւղեր աւերեցին և Մայրաթոռոյ կալուածներուն ալ վնասեցին։ Թէպէտ Հերակլ թագաւոր պատգամաւորով և Ղուկաս կաթողիկոս անձամբ միջամտեցին, բայց արդիւնք չունեցան, մինչև որ Որմիէ եկող ներքինին չսպաննուեցաւ, և Այվազ ու Քասըմ հոգին անդրէն ի գործ խոռեանց* (ԴԻԻ. Ա. 10)*։ Եթէ ներքինը հանդարտեցաւ, արտաքինը չփոթութիւններէ ազատ չմնաց. վասնզի Հերակլ Վրաց թագաւորը և Ումման խան Լէզգիներու կամ Խաղտեաց գաւառին պետը, և Մովսէսն Տայոց Հոգորոցի, որ է Օսմանեան սահմանակից կուսակալը, իրարու հետ չարունակ պատերազմի մէջ էին* 1785 *և* 1786 *տարիներու մէջ, և Հայաստան էր որ առնակոխ կ՚ըլլար անոնց արշաւանքներուն պատճառով, Մայրաթոռն ալ ծանր վնասներ կը կրէր, որչափ ալ Ղուկաս՝ Վրաց թագաւորին ազդարարութեանց վրայ, ջանար հոգ տանել պարգևաբաշխեանց՝ ամրացուցանելով զինեալս և զինակիրս երկրին* (ԴԻԻ. Ա. 11)*։*

**ԱՐՑԱԽԵՑԻՔ ԵՒ ՅՈՎՍԷՓ**

**2192**. *Ժամանակին ամէնէն աւելի խօսուած անձերէն, կամ լաւ ևս բռնակալ խաներէն մէկն ալ Իբրահիմ խանն էր, որ կ՚իշխէր Շուշիի նահանգը, հներուն Արցախը, Ղարաբաղ կամ Խամսա անուններով ալ յիշուած զանազան գրութեանց մէջ։ Երբոր ուրիշ կողմեր փոխադարձ կռիւներ տեղի կ՚ունենային, Իբրահիմ անտանելի բռնութեամբ կը նեղէր իր հպատակ քրիստոնեաները, Հայերն ու Աղուանները, որոնց տարբերութիւնն ալ կորած էր գրեթէ, և Աղուանից կաթողիկոսութիւնն ալ, Ամենայն Հայոց հայրապետութեան թեմ մը կամ վիճակ մը կը նկատուէր։ Գանձասարի աթոռին վրայ կը գտնուէր տակաւին Յովհաննէս Հասան-Ջալալեան* (§ 2092)*, և հակաթոռ Իսրայէլ Գանձակ քաշուած, Վրաց թագաւորութեան պաշտպանութեամբ կը յուսար նորէն աթոռ գրաւել։ Իբրահիմի բռնութիւնները այն աստիճան ծանրացան, որ քրիստոնեաներ ըստիպուեցան աչուընին դուրս դարձնել, մանաւանդ որ իրենց քաջալերութեան կը հասնէր Յովսէփ Արղութեան, Ռուսաստանի առաջնորդը, որ սերտ յարաբերութիւններ կրցած էր կազմել Ռուսիոյ Կատարինէ կայսրուհւոյն արքունիքին հետ* (ՄՈՎ. 317)*։ Առաջին անգամ Յովսէփի անունը կը յիշենք հանրային եղելութեանց մէջ, և տեղն է որ անոր նախընթացն ալ ցուցնենք։ Յովսէփ ծնած էր Սանահին 1743 մայիս 23՚ին, Շիրչ բէկի և Քեթեվան տիկնոջ որդի։ Հայրը Սանահնի կալուածատէր և Վրաց արքունիքին պաշտօնեայ, տեսակ մը տոհմային ազնուականութեան հովեր ունէր, զոր յետոյ որդին Յովսէփ պաշտօնապէս իշխանութեան աստիճանին բարձրացուց, սերունդնին Զաքարէ և Իւանէ սպասալարներուն, անկէ ալ Արշակունիներուն, անկէ Պարսից Արտաշէս Երկնաբազուկ թագաւորին բարձրացնելով, Քրիստոսէ հինգ դար առաջ* (ԱՐՂ. 15)*։ Յովսէփ պատանին Էջմիածինի*

*դպրանոցը մօտ, Սիմէոն Երեւանեցիին աշակերտեցաւ, եկեղեցական ատրճաններ տրուեցաւ։* 1769'*ին* 26 *տարեկան եպիսկոպոս ձեռնադրուեցաւ, Տաճկահայոց մէջ էջմիածինի չինութեանց համար ժողովարարութիւն կատարեց, և* 1773'*ին, մինչ Սիմէոն կաթողիկոսէ՝ Ռուսաստանի առաջնորդ նշանակուեցաւ։ Յովսէփ առաջնորդ՝ Մինաս Տիգրանեանի յաջորդութեան հետ անոր գաղափարներն ալ ժառանգեց, Հայկական վերակենդանութեան գաղափարը սկսաւ մշակել, իրեն ծրագիրը հիմնելով Ռուսական կայսրութեան վրայ, որ ամէն միջոցներով կը ջանար դէպ հարաւ ընդարձակել իւր տիրապետութիւնը։ Այդ նպատակով Պարսկական և Օսմանեան իշխանութեանց ներքև գտնուող քրիստոնեաներուն աչքին ազատութեան յոյսերը կը ցոլացնէր* [illegible] *խոստումներով, եթէ չէին* [illegible] *իրենց տիրապետներուն դէմ* (ԱՐՂ.37)։ *Ռուսաթուրք պատերազմ մը սկսած էր* 1768'*ին, և* 1769'*ին սկիզբը Կատարինէ կայսրուհին նոյն միտքով կոչեր կ'ուղղէր՝ Յունաստան, Սերպիա, Չրնակորա, Վրաստան և Հայաստան։ Այդ նպատակով էր* 1768 *յուլիս* 30'*ին կայսրուհւոյն կողմէն Սիմէոնի յղուած հրովարտակն ալ* (§ 2094)։ *Անա թէ ինչ պարագաներու ներքեւ կատարուած էր Յովսէփի առաջնորդական անուանումն ալ, իբրեւ առիթներէն օգտուելու և առիթները օգտակար ընելու կարող անձնաւորութիւն մը։*

**2193**. *Ժամանակին նշանաւոր անձնաւորութիւն մըն էր նաեւ Ջուղայեցի Աղազարը,* 1747'*ին Աստրախան և* 1749 *Մոսկուա եկած, և Ռուսաստանի մէջ ընտիր դիպակի և*

ՌՈՒՍԱՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐ

*կերպասի գործարաններու սկզբնաւորողն եղած, որով մինչև կայսերական արքունիքին պաշտպանութիւնն ու համակրանքը գրաւեց, և ազնուականութեան պատւոյն բարձրացաւ։ Սա ինքն է հռչակաւոր Լազարեան գերդաստանին նահապետը, որ անունով ճանչցուեցան Աղազարի զաւակները, ուղիղ անուամբ Եղիազար, և Ռուսական հնչմամբ Լազար կոչուած։ Աղազարի զաւակներն էին, Յովհաննէս, Մինաս, Խաչատուր և Յովակիմ, որ հօրենական ձեռնարկները ծաղկեցուցին, և զգացումները ընդարձակեցին, և ուսաբնակ Հայութեան գլուխներ ճանչցուեցան, իրենց կարողութեամբ և հարստութեամբ, նախաձեռնութեամբ և բարերարութեամբ։ Լազարեան զաւակներուն յաջողութիւնները քաջալերեցին Հայերուն դէպի Ռուսաստան գաղթականութիւնը. և Կովկաս լեռներու հիւսիսակողմը հետզհետէ չէնցաւ հայաբնակ քաղաքներով, մանաւանդ երբ Սիմէոն յաջողեցաւ այն կողմերը Աղուանից աթոռին ոտնձգութիւններէն ազատել, և ուղղակի Մայրաթոռոյ իրաւասութեան ներքեւ մտցնել կայսերական հաստատութեամբ* (§ 2094)։ *Ռուսական կառավարութիւնն ալ ամէն կերպով կը քաջալերէր այդ գաղթականութիւնները, մանաւանդ թէ զայն իբրեւ զէնք գործածեց Խրիմի խանութեան տիրելու, և իւր տիրապետութիւնը Սեւ Ծովի վրայ տարածելու համար։ Առաջ* 1774 *յուլիս* 21'*ին Քիւչիւք-Քայնարճըքի դաշնագիրով Խրիմի խանութեան անկախութիւն տրուեցաւ, և Օսմանեան գերիշխանութենէն հանուեցաւ* (ԺՈՒ. 358), *Շահին Կէրայ՝ Ռուսիոյ համակիրը Օսմանեան համակիր եղող Տէվլէթ Կէրայի տեղ խան կամ իշխանապետ եղաւ* (ԺՈՒ. 359), *հնարիմացն կոմս Գրիգոր Պոտեմկին* (Potemkin) *հարաւային Ռուսիոյ կուսակալ անուանուեցաւ, և ամէն միջոց գործածեց Խրիմի քրիստոնեաները գաղթել տալու՝ որ խանութիւնը տկարացնէ։ Գաղթականութիւնը սկսաւ* 1778 *օգոստոսին* (63 ԿՌՆ. 321), *և* 12,000'*է աւելի Հայեր փոխադրուեցան Տոնի գետաբերանը* (ԱՐՂ. 54), *ուր տարիէ աւելի վրանաբնակ անցընելէ ետքը,* 1779 *նոյեմբեր* 4'*ի հրովարտակով Նոր-Նախիջեւանի տեղը տրուեցան, և* 1780 *յունուար* 14'*ին* [illegible] (63 ԿՌՆ. 323) [illegible] *մէջ* (63 ԿՌՆ. 324)։ *Նոյն միջոցին Խրիմի մէջ ներքին խռովութիւններ գրգռուեցան, Ռուսական բանակը Խրիմ մտաւ, Շահին Կէրայ հրաժարիլ ստիպուեցաւ, և* 1783'*ի ապրիլին Խրիմի թերակղզին և Քուպանի նահանգը Ռուսական գաւառ հռչակուեցան* (ԺՈՒ. 359)։

ՅՈՎՍԷՓԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

**2194**. *Այդ եղելութեանց մէջ գլխաւոր դերակատար կը գտնուէր Արղութեան՝ Ռուսաստանի երիտասարդ առաջնորդը, որ գիտցած էր Հայ գաղթականութեան գլխաւորները չուրջը բոլորել, կոմս Պոտեմկինին անձնական բարեկամութիւնը չահիլ* (ԱՐՂ. 44), *անոր միջնորդութեամբ արքունեաց հետ յարաբերութիւն ունենալ, և Ռուսական քաղաքականութեան ճարտար օգնականը ըլլալ։ Հարաւային գաւառներու մէջ հայաբնակութեանց փոփոխութիւններ՝ Սիմէոնը յորդորեցին այն կողմերն ալ Յովսէփի յանձնել, Խրիմու առաջնորդ Պետրոս վարդապետին 1779 յունուարին վախճանելուն վրայ։ Անկէ ետքն է որ Նախիջեւանի հիմնարկութեան հրովարտակը առացուեցաւ, երբ Յովսէփ Աստրախանէ Պետրբուրգ անցաւ, եկեղեցւոյ օծման պատճառով, և մեծամեծներու հետ միանալով ղուէր մասոյց ի ձեռն տեառն Յովհաննէսին Եղիազարեանց որ հօրը տեղը անցած էր, և ընդունեցաւ զկոնդակ խնդրանաց, շնորհել տեղ և զբնակութիւն, որ է ի վերայ գետոյն Տօնա, և անուանեցաւ, կ'ըսէ, քաղաքն Նոր Նախիջեւան* (63 ԿՈՆ. 322)։ *Ասոր վրայ 1780 փետրուար 18, երեքշաբթի, Սուքիասանց տօնին օրը, կ'օծէ Պետրբուրգի Ս. Կատարինէ եկեղեցին, և կայսրուհիէն կը պատուէր ընդունելով շնորհէ և զհող գործոյն յայտ բանէն։ Մարտ 10'ին կը ստանայ Խրիմու առաջնորդութեան պաշտօնագիրը* (63 ԿՈՆ. 323), *և մայիս 9'ին կայսրուհւոյն կը ներկայանայ։ Սիմէոնի մահուան վրայ, Ղուկաս նոր կոնդակ կը ստանայ, և 1780 նոյեմբեր 4'ին կու գայ ի Նորաշէն քաղաքս Նախիջեւան. 1781 ապրիլ 4'ին, Զատկի օրը կ'օծէ զմայր եկեղեցին Նախիջեւանու յանուն Խնդրակատար սուրբ Աստուածածնի. ապրիլ 21'ին թափորով և անդաստանով կը դնէ ընծայաբերեալ ի շուրջ կողմանց քաղաքիս. մայիս 9'ին Նախիջեւանի մէջ շնորհեաց զարդարանս և զբաղում կանանս կը հաստատէ. և յունիս 6'ին Կատարինեսլավ նոր քաղաքին մէջ Ս. Աստուածածին եկեղեցին կը հիմնարկէ, և սեպտեմբեր 9'ին Մոսկուայի Ս. Խաչ եկեղեցին կ'օծէ* (63 ԿՈՆ. 322-328)։ *Այսպէս կը շարունակէ Յովսէփ զանազան քաղաքներու մէջ եկեղեցիներ հիմնարկելով և նուիրագործելով, որոց ցուցակը կազմած է ինքը, և որուն մէջ յատուկ յիշատակութեան արժանի կը սեպենք 1792 յուլիս 25'ին Գրիգորուպոլ քաղաքին հիմնարկէքի օրհնութիւնը* (63 ԿՈՆ. 598)։

ՌՈՒՍԻՈՅ ՄԵՐՁԵՑՈՒՄ

**2195**. *Երբոր Ռուսաստանի մէջ Հայեր հանգիստ և բարեկեցիկ կեանքի կը սկսէին տիրանալ, և պետական հովանաւորութիւններ կը վայելէին, բնական էր որ Հայաստանի մէջ եղողներուն տառապագին վիճակը, զիրենք ստիպէր աչուրնին դէպ հիւսիս դարձնել, ուստից կը սպասէին ամենատեսակ բարութիւններ։ Միւս կողմէն ոչ նուազ մտադրութեամբ Ռուսներն ալ Հայերուն գործերով կը զբաղէին, և տեղեկութիւններ կը քաղէին անոնց կացութեան և ոյժերուն և տրամադրութեան վրայ, թէ պիտի կարենա՞ն արդեօք օգտուիլ, կամ հիմնական օժանդակութիւն գտնել այդ կողմէն։ Լուրջ բանակցութիւններու յիշատակներ կը գտնենք 1780 տարւոյ սկիզբները։ Ռուսական կողմէն միջնորդը հռչակաւոր Աղեքսանդր Սուվորոֆ* (Souvorof) *էր, իսկ Հայոց դատը ներկայացնողներ Արղութեան եպիսկոպոսը և Յովհաննէս Եղիազարեան։ Յովսէփ Աստրախանէ և Յովհաննէս Մոսկուայէ 1779 օգոստոս 5'ին Պետրբուրգ հասած էին, եկեղեցւոյն օծման պատճառով* (§ 2194), *և նոյն օր հրաւէր ստանալով Պոտեմկինի կը ներկայանան, միւս օր օգոստ 6'ին Ռուսաց եկեղեցւոյն մէջ Այլակերպութեան տօնին արարողութեանց կը գտնուին, կայսրուհիէն կը ճանչցուին, և հետզհետէ յարաբերութիւնները կ'ընդարձակեն* (63 ԿՈՆ. 509)։ *Ռուսեր Կասպից ծովեզերեայ կողմերը և Կովկասեան գաւառները գրաւելու համար Պարսից դէմ պատերազմ էին բացած, և 1780 յունուար 1'ին Իւան Գորիչ* (Goric) *զօրավար անձամբ Արղութեանին կու գար այն կողմերուն վրայ ծանօթութիւններ ստանալ։ Միւս օր Սուվորոֆ ինքն էր որ ոչ միայն անձամբ բազում հարցմունս արար, և զկացութենէ ազգիս անուանեալն մերոյ տեղեկութիւններ խնդրեց, այլև յառաջարկութեան –*

բոր յոյժ, որպէս թէ Նորոֆելոյ էջեն է մեղ էշխանութեան էնչ։ Յունուար 3'ին Յովսէփ և Յովհաննէս Պոտեմկինին կը ներկայանան, և տեղեկութիւն տալու կարգին կը համարձակին Թախանջել, Նորոֆել է մեղ շմանոսոր տէրութեան է մեծ Հայաստան է քաղաքն Երեւան, որուն Պոտեմկին պայման կը դնէ, որ պատրէարքն, այսինքն Էջմիածինի կաթողիկոսը, քանէօք էշխանօք խնդրէր է գործ ածէյեն (63 ԿՈՆ. 511)։ Յովհաննէս ժամանակ անցընել չուզելով, յունուար 10'ին տեղեկագիր մը կը ներկայէ, ուր Ռուսական հովանաւորութիւնը կը խնդրէ, որ Հայերը համարձակին իրենցմէ պետ մը որոշել, որուն չուրջը կրնան 20,000, և մինչև իսկ 60,000 պատերազմիկներ հաւաքել (ԱՐՂ. 111-114)։ Յունուար 13'ին նոր տեսակցութիւն, ուր Արցախի ցեղապետներու կամ մելիքներու անուններն ալ կը ներկայեն Սուվորոֆի, իրենց զինեալ մարդերու թուերով, որք են, Յովսէփ Գիւլստանի, Ադամ Ջրաբերդի, Եսայի Դիզակի և Շահնազար Վարանդայի, իւրաքանչիւրն հազարական, Միրզա ու Ալլահվէրտի Խաչէնի՝ միասին հազար։ Կը յիշեն ևս Իբրահիմ խանի բռնութեան ներքև ընկճուած՝ Աղուանից ու Սիսուանի ու Ղափանի քաջերը, որոնք կրնան պատերազմիկներ հանել եթէ շարժումը սկսի (63 ԿՈՆ. 512)։ Այդ բանակցութիւններէ անմիջական և գործնական արդիւնք մը յառաջ եկած ըլլալը չենք գտներ՝ իրաւ, բայց գրոյցներն ու շշուկներն ալ բաւական էին գրգռել Հայաստանի նեղեալները, որոնց արդէն ակնարկեցինք (§ 2192)։

**ԱՐՑԱԽԻ ՇԱՐԺՈՒՄԸ**

**2196**. Արղութեան իւր ձեռնարկներուն մասին փութաց տեղեկութիւններ հասցնել Ղարաբաղի իշխաններուն, և յատկապէս Աղուանից կաթողիկոս Յովհաննէսին, որ իւր դիրքովը և իւր նախորդներէն՝ Սիմէոնէ (§ 1845) և Եսայիէ (§ 1899) մնացած աւանդութեամբը, և չուրջը գտնուող Արցախեցի լեռնականներուն ազդեցութեամբը՝ միշտ շարժումի պատրաստակամ զգացումներ կը սնուցանէր։ Գանձասարի աթոռանիստ վանքին մէջ մելիքներու ժողով կազմուեցաւ, և որոշում տրուեցաւ Շուշու խան Իբրահիմի ձեռքէն ազատելու համար ոտք ելնել, շարժումին սկզբնաւորութիւն տալ, և Ռուսական բանակին առիթ ընծայել՝ արեւմտեան Կասպիական գաւառներէն դէպ յառաջ քալել, ինչպէս որ յուսադրութիւն յայտնած էին Արղութեան և Լազարեան։ Այդ որոշման վրայ փութացին պատշաճ տեղեկութիւնները հասցնել Ռուսաստան, որպէսզի անոնք ալ գործը կայսրուհւոյն և իւր նախարարներուն և զօրավարներուն հաղորդեն (ՋԱՄ. Բ. 74)։ Բայց նորէն ներսէն սկսաւ Հայոց ձախողուածը։ Նոյնինքն Յովհաննէս կաթողիկոսի եղբայրը Ալլահղուլի կամ Աստուածատուր բէկն էր, որ իւր եղբօր և իշխաններուն խորհուրդը Իբրահիմ խանին կ'իմացնէր, երբ դեռ անոնք գործի ձեռնարկած չէին։ Ռուսաստան ղրկուելիք գրութիւնները տանող՝ Գրիգոր ժիր սուրհանդակն ալ, Իսրայէլ հակաթոռին միջոցով կը ձերբակալուէր Գանձակի մէջ (ՄՈՎ. 317), և Իբրահիմ իւր սովորական բռնութեանց վրայ վրէժխնդրութիւնն ալ կը բարդէր։ Ուստի գլխաւոր մելիքներ կը փութան Իբրահիմի սահմաններէն խոյս տալ, և Գանձակ ապաստանիլ (ՋԱՄ. Բ. 74), և միայն երեքը հրապուրուելով Իբրահիմի մօտ կու գան. Մէջլում և Աբով կը բանտարկուին, և Բուխտամ կ'աքսորուի (ԱՐՂ. 135)։ Աւելի դժբախտ եղաւ Յովհաննէս կաթողիկոսի վիճակը, որ բռնաւորին ձեռքը ինկաւ, և անխնայ գանակոծութեան ենթարկուեցաւ, մինչև որ նոյն իսկ մօրակի հարուածներուն ներքև հոգին աւանդեց (ՄՈՎ. 318, ՋԱՄ. Բ. 74), թէպէտ ուրիշներ բանտի մէջ թունաւորուած կը կարծեն (ԱՐՂ. 135)։ Իսրայէլ փութացած էր Գանձակ գալ, իւր դաւաճանութեան վարձքը ստանալ, և Գանձասարի աթոռին տիրանալ, բայց նպատակին չհասաւ, զի ոչ ժողովուրդը և ոչ Էջմիածինի աթոռը հանդուրժեցին անոր կաթողիկոսանալուն։ Ղուկաս գիտէր՝ որ իւր ընտրութենէն առաջ Իսրայէլ հետամուտ եղած էր Էջմիածինի տիրանալ (ԴԻԻ. Գ. 32 և 124), բայց այսուհանդերձ չէր քաշուած անոր սիրալիր գիրեր ալ ուղղել, հանդարտ պահելու համար (ԴԻԻ. Գ. 17 և 39)։ Սակայն մէկտեղ Ղուկաս չէր վարանած յայտարարել, թէ հաստատուն և անդառնալի վճռական

Բոլոր հրամայեալ է, ու ի բառնալ զնախնեկեա-կան անուն Իսրայէլին յեկեղեցեաց մերոց (ԴԻՒ. Դ. 504): Գանձասարի վանքը, Յովհաննէսի սպանութեան պահուն աւարի և կողոպուտի մատնուած էր, և հազիւ թէ քիչ մը բան կրցած էր ազատել Սարգիս եպիսկոպոս, Յովհաննէսի միւս եղբայրը, և ամուր տե-ղեր պահած (ՄՌՎ. 318): Իսկ Աղուանից աթոռը անկերպարան վիճակ ունէր, ոչ Իս-րայէլ օրինաւորապէս ճանչցուած էր, և ոչ ուրիշ օրինաւոր կաթողիկոս անուանուած էր: Այսպէս շարժումի գործը դեռ հրապա-րակ չնետուած՝ խանձարուրին մէջ խեղդուե-ցաւ, թէպէտ Արղութեան չյուսահատեցաւ և նորէն շարժումը կ'ուզէր վերանորոգել, մինչեւ իսկ անձամբ տեղւոյն վրայ գործերը կարգադրելու յանձնառութեամբ (ԱՐՂ. 136): Հազիւ թէ 1787'ին Ռուսական գունդ մը Վրացւոց օգնութեան եկաւ. մելիքներն ալ միացան, և Իբրահիմի զօրքերուն լու-ջարդ տուին. բայց յանկարծ Ռուս գունդերը ետ դարձան, զի Օսմանեանց հետ պատե-րազմը կը պարտաւորէր այն կողմը զօրա-ցընել (ԺՌՒ. 360): Մելիքներն ալ ստիպ-ուեցան խոյս տալ Վրաց և Ռուսաց կողմե-րը: Իբրահիմ անոնց կալուածները գրաւեց, Արցախը իր կիսովի անկախութենէն զրկուե-ցաւ, մնացած ժողովուրդը ընկճուեցաւ, և անգամ մըն ալ ակնկալութիւններ յուսա-խաբութեան փոխուեցան (ԱՐՂ. 138):

**2197**. Ղուկաս կաթողիկոսի անունը չի տեսնենք այդ եղելութեանց մէջ, այլ պէտք չէ հետեւցնել թէ նա կըր-ցած ըլլայ անտարբեր մնալ կենսական խնդիրներու հանդէպ: Երբոր Պոտեմկին՝ Արղութեանի և Լազարեանի առաջարկու-թեանց կը պատասխանէր, թէ պէտք է որ կաթողիկոսին կողմէն ալ Ռուսական պե-տութեան դիմում մը ըլլայ (§ 2195), Ղու-կաս դիմումը գրեց, և աղաչեց որ ազատ-ուին Պարսկական լուծէն (ԱՐՂ. 132), բայց չհամակերպեցաւ արկածախնդիր ձեռնարկ-ներու մասնակցիլ: Մասնաւորներու, այ-սինքն ընդհանուր պատասխանատուութեան ենթարկուած չեղողներու համար, կրնան ներուիլ երբեմն յախուռն ձգտումներ և յան-դուգն ձեռնարկներ. բայց ոչ անոնց, որոնք

ՂՈՒԿԱՍԻ ԸՆԹԱՑՔԸ

իրենց անձէն աւելի իրենց դիրքէն պէտք է ազդուին, և չեն կրնար իրենց անձնական գաղափարով պաշտօնական դիրքը վտան-գել, որ հանրային շահ մըն է, և պաշտօ-նատարներ անոր սպասաւորն են, և ոչ անոր տէրը: Ղուկաս ալ այդ սկզբունքին կը հետեւէր, և իր տեսութեանց յայտնի լու-սաբանութիւնն ունինք Մատրասի Հայազ-գիներէն Սուլթանումեան Շամիրի գրած նա-մակին մէջ: Շամիր Ղուկասի մտադրութիւ-նը հրաւիրած էր վան ողորմութեան աշխարհի-մերոյ և ոգւոյ հոգ տանել. միանգամայն Ղու-կասը գրեթէ մեղադրած էր գրելով, կ'երեւի թէ հաճիք ընդ ժամանակութեան այլայլելոց և ոչ օտարէք զողորմութեան: Ղուկաս կը պատասխա-նէ, թէ ձուկերն իսկ ցանցէն և թռչուններն ալ վարմէն ազատիլ կ'աշխատին, մինչ յե-մար էցե՞մք, որ ի տառապանաց զերծանել չկամի-ցիմք: Միայն թէ, կը յաւելու, այժմոյս կարէ դժուարին է և վտանգաւոր յոյժ, վասն որոյ եր-կեաց լուրեաց զէտրն ընտրել դէտոյ է: Զկայ, կ'ըսէ, Մովսէսը՝ որ Փարաւոնէն ազատէ, ուստի համատարածեալ էմա՛, որ ու ի հեթանոսական տերութենէն և ոչ յայլոց՝ մեր ազատութեան կարէ լինել այժմ: Արղութեանի և համախոհներուն ակնարկելով կը գրէ, թէ ոմանք բուռ հաճոյից խօսելով, թէ յայս ինչ և յայն ինչ կողմանց յե-ղընդարձակութեան և օգնականութեան լինիցի մեզ, քողարկեալ են զնոսա. և այդպիսի յուսադրու-թեանց ապարդիւն լինելուն փաստն ալ կը յիշէ, որ է վերջին ձախող շարժումը, երբ Արցախեցիք յետեցան առ ազատութեան նոցա՝ ի բանաւորէն կարեաց, զինչ անցք անցին ընդ նոսա. զի՞րդ մահացաւ խեղճալի Յովհաննէս կաթո-ղիկոսն, և որքա՜ն աղաղակեցան. ասորք աթոռն Գանձասարայ, և այժմ ո՞ւր են մելիքազունք, և զինչ կրեցին: Ղուկաս գիտակցօրէն կը ջա-տագովէ իր ընթացքը, և կը հաւաստէ թէ չաւեր իրեն գոհութեան և գովութեան գիրեր են յղած, թէ յոյժ բարւոք եր, որ դուք ոչ ցուցէք առ նոսա զնոյն համակամութեան, և անխօս գահեցիք լուարք քաջ (ԴԻՒ. Ա. 17-19): Ղուկասի խոհական ընթացքին նոր նշաններ ալ պիտի ունենանք, երբոր ապագային կըր-կին յիշենք անոր զգուշաւոր ջանքերը:

**2198**. Ղուկաս չէր կրնար չտեսնել այն անհեղ տագնապները՝ որոնք Մայրաթոռին շուրջը բոլորած էին, և աւելի մեծեր ալ կը

սպառնային։ Հերակլ Վրաց թագաւոր 1787'ին Իբրահիմ խանին վրայ ելաւ, որովհետեւ իւր կողմէն Ղազախու և Շամշատէլի խլամ բնակիչներէն մաս մը Իբրահիմի կողմը գաղթած էր․ ընդհակառակն Իբրահիմի կողմի Հայերն ալ Վրաց կողմը անցնելու համար պաշտպանութիւն կ'ուզէին։ Հագիւ պատերազմը կը սկսի, Վրացիք կը պարտաւորուին ետ դառնալ, զի Ուման խան իրենց երկիրը մտած էր։ Ուման կը պարտաւորուի տեղի տալ (Դիւ. Ա. 12), և Վրացիք Իբրահիմի դէմ պատերազմը կը նորոգեն 1788 գարունին, և ինքեան անուն եղեն, զգերի և գաւառ կողոպտեալ ետ կը դառնան, առանց Գանձակ քաղաքը կարենալ նուաճելու։ Վրացւոց հետ կը գտնենք Հայազգունդ մըն ալ Մէջլում և Աբով մելիքներու հրամանատարութեամբ (Դիւ. Ա. 13), որոնք յաջողած էին Իբրահիմի բանտէն ազատիլ (§ 2196)։ Բայց Իբրահիմ ասով չազատիր, նոր ոսոխ մը կ'ելլէ իրեն դէմ, Յաթալի խան՝ Նեբրէնէ Շահ անուանեալն, որ Վրացիներուն հետ դաշնակցելով կ'ուզէ Իբրահիմը ընկճել, և 1789'ին պատերազմը կը նորոգէ։ Գանձակի կառավարիչ խանը՝ Իբրահիմէ ապստամբելով դաշնակիցներուն կը հնազանդի, բայց Իբրահիմի բախտէն Յաթալի կը մեռնի, և Իբրահիմ անդրէն արծարծէ զնարն չարութեան (Դիւ. Ա. 14), և երկկողմանի աւերումներ կ'ընդարձակուին։ Ասոնց կը բարդուի Բագրեւանդի մեծ երկրաշարժն ալ, որ մինչեւ իսկ Ս. Յովհաննու հոյակապ եկեղեցւոյն պատն ալ կը փլցնէ (Դիւ. Ա. 15)։ Նոյն միջոցին Երեւանի Մահմատ խանն ալ (§ 2191) հրապարակ կը նետուի, Հին Նախիջեւանը Իբրահիմի ձեռքէն կ'առնէ, և հոն իւր կողմէն նոր կառավարիչ կը հաստատէ։ Նա Պայազիտի կուսակալին բանակն ալ ետ կը վանէ, որ մինչեւ Երասխի եզերքը հասած էր, այլ Պայազիտի բերդին տիրել չկրնալով, Արծափն ու Քորունք ու Մուսունք այրելով և կողոպտելով ետ կը դառնայ։ Այդ կռիւներուն հետեւանքն եղող Ճնշեալ և աւերեալ թիւանք՝ գերեւեալ ըստ մեծի մասին եղեն ի դատարկեալ տեղիս Հայոց (Դիւ. Ա. 17)։ Բայց կացութիւնը ալ աւելի աղետալի դարձաւ 1790 տարին։

2199. Երեւանի խանը վերահաս վտանգէն վախնալով, ըմբռնեցին զդուռն և զնոյն խոր, Խոյ քաղաքը յղած էր Հիւսէյին խանի հոգածութեան յանձնելով․ բայց երբ ետ ուղեց՝ աւանդը զլացուեցաւ, և Մահմատ պարտաւորուեցաւ պատերազմով ստանալ իւր ինչքը, և Հիւսէյինի եղբայրը Ջաֆարղուլի խանը պատանդ առնելով տեղը դառնալ։ Կարծելով թէ հին բարեկամութիւնը վերահաստատուած է, պատանդը կ'արձակէ, բայց նա Երեւանի զօրութեան վրայ քաղած տեղեկութիւններուն յենլով, պատերազմը կը նորոգէ 1790 գարունին, և մինչեւ Երեւան կը յառաջէ։ Մահմատ նեղի մտած, Երեւանի բերդին մէջ կ'ամրանայ, իրեններն ալ չորջակայ մանաւոր բերդերուն կ'ապաւինին, Էջմիածինի Մայրաթոռն ալ իւր պարիսպներով և աշտարակներով, իբրեւ ամրոց կը գործածուի և պատերազմի ամբոխով կը լեցուի։ Ղուկաս կաթողիկոս տագնապալից վիճակի կ'ենթարկուի, ոչ միայն նիւթական նեղութիւններով, այլեւ բռնելու ընթացքին կողմէն։ Մայրաթոռը Երեւանի խանին հպատակն էր, և Մահմատ ազդարարութիւն կը յղէր կաթողիկոսին, որ թշնամիին դէմ դնէ, մ՛ գուցէ հաւատացութեան արմանիք ընդ նմա, և կամ տեղիք նմա չերեւեալ էին, այլ հարցիք և ի բաց վանեսցին։ Միւս կողմէն Ջաֆարղուլի՝ կ'աշխատէր կաթողիկոսը իւր կողմը շահիլ, վստահացնելով թէ ոչ յետ հարաւ փոխեալ է մեր բարեկամութիւն (Դիւ. Ա. 21)։ Հիւսէյին խան ալ Խոյէ կը հասնէր, և եղբօրը հետ պատերազմը կը սաստկացնէր, ու Նորագաւիթ գիւղէ մեկնելով, ուր իրենց բանակեալն էր, Փարաքար կու գար՝ հարթ ծախեալ հանդիպած գիւղերը։ Այս կերպով Հիւսէյին և Ջաֆարղուլի եղբայրներ Էջմիածինի մօտեցան, և յառաջ քան զգալուստ արքունեաց ոմանց, Կուսանաց երեք վկայարաններէն ալ քան յառաջ զոր ինչ գտին, և Ս. Գայիանէի վանքին ետեւէն անցնելով Քասաղի եզերքը բանակեցան, և կաթողիկոսը տեսութեան հրաւիրեցին։ Ղուկաս վկայելով մէկտեղ, թէ ոչ մեր ընդ յետ հարաւ փոխեալ է, հրաւէրին չգնաց, պատճառելով թէ իշխանութիւն ամբոցն չէ ի յետոյ մեր (Դիւ.

Ա. 22)։ *Երբոր էջմիածինի մէջ մեծագոյն վտանգի վախով կը տագնապէին, Ոսկեցիք յանկարծ պաշարումը վերցուցին, և հետզհետէ Երասխի մօտ Զէյվէ գիւղը, Բլուր բերդը, և Օրթալուի անցքը դադարներ ընելով, դարձան իրենց երկիրը՝ Մակու գաւառը։ Արշաւանքին արդիւնքը Երեւանի գաւառին Հայերուն ընդհանրապէս, և Մայր աթոռին մասնաւորապէս կրած վնասներն եղան, ոչ միայն* ի Լեզգեաց անտի, այլեւ յերկրոցս տաճկաստանեայց սրիկայից։ *Անոնց մեկնելէն ետքը, Երեւանի Մահմատ խանը ա-ռիթ գտաւ Հին Նախիջեւանի կողմը յարձակիլ, և ինքն ալ իր մասին նոր աւերածներով, կարծեց իրեն սահմանին մէջ եղածներուն վրէժը լուծել, այլ* ծանուցանէ Հայք *էին, որ կրէին այդ նեղութիւնները։ Չի ինչպէս նոյնինքն Ղուկաս կը գրէ,* բազում վանորայք և եկեղեցիք կողոպտեցան և աւերեցան, և մանկունք նոցին գերեցան յերեւան եղեն, և որք մնացեալ են, այնքան են աղքատ կողոպտին և տնանկք լինին (Դիւ. Ա. 24)։ *Այսուհանդերձ պահ մը Մայրաթոռին շուրջը պատերազմական արկածները դադարեցան, զի Պարսկաստանի մէջ դահակալութեան ներքին մրցումները գրաւած էին բռնապետ խաներուն գործունէութիւնը։*

**2200**. *Ցիշեցինք թէ Արղութեան և Լազարեան ձեռնթափ եղած չէին Հայկական խնդիրը գրգռելէ* (§ 2196), *և այդ մասին հետաքրքրական գրուածներ կը հաստատեն մեր բամբը։*

ՌՈՒՍԱԿԱՆ ԴԱՇՆԱԳԻՐ

*Կրկին ծրագիրներ, փոխանակուած կը գտնենք 1789'ին վերոյիշեալներուն՝ և Ռուսական կառավարութեան կողմէն իրենց հետ բանակցող Պոտեմկինի միջեւ* (Դիւ. Դ. 731)։ *Հայոց ծրագիրը 18 յօդուածներ ունի, որով ապագայ Հայոց թագաւորութեան և Ռուսաց կայսրութեան միջեւ յարաբերութիւնները կը գծուին, և կը վճարուի* կողմանց երկուց թագաւորութեանց ձեռն տուրքն յատկացելով։ *Առջի յօդուածներով կրօնական յարաբերութիւններ կը հաստատուին երկու եկեղեցիներու մէջ. 5'րդ յօդուածով կ'ընդունուի Ռուսական բանակի մը Հայոց թագաւորութեան մէջ մնալը, և 6'րդ յօդուածով ալ Հայոց կողմէ հարկ վճարուիլը* ի հանգոյն ոսկ-ւոյ և արծաթոյ, *և կ'ընդունուի պատերազմի ատեն իրարու զինու զօրութեամբ օգնելու* դաշնադրութիւն։ Հայոց թագաւորը կայսրուհ-ւոյն կամօք պէտք ընտրել, *էջմիածինի մէջ պիտի օծուի, և Վաղարշապատ կամ Անի, կամ Արարատի ուրիշ պատշաճաւոր քաղաք մը պիտի նստի։ Նոյնեան Տապանի և Լուսաւորչի և Դաստառակի ասպետական շքանշաններ պիտի հաստատուին. ազգային գոյները պիտի ըլլան կարմիր և կանաչ և կապոյտ. զինանշանը արծիւ միագլխի և երկու առիւծ. հին նախարարութեանց սեբունդները իբր իշխանական տուներ պիտի ճանչցուին. գիւղեր կալուած պիտի ըլլան՝ բայց ոչ երբեք մարդիկը ստրուկ. կաթողիկոսն ալ Հայոց թագաւորին առաջարկութեամբ պիտի ընտրուի։ Վերջապէս երկու թագաւորութեանց մէջ առեւտրական պայմանագիր, և փախստականներու դաշնագիրներ պիտի հաստատուին։ Իսկ Ռուսաց կողմէն մատուցուած ծրագիրը, Հայոց իշխանութիւնը* Նախարարութիւն *կ'անուանէ, թէպէտ կը յաւելու թէ Ռուսիա զայն* երե-ղնագոր *պիտի ճանչնայ։ Ռուսական 6000 մարդու բանակ մը Հայաստան պիտի մնայ մինչեւ տասը տարի, որ անկէ ետքը 4000'ի, և 15 տարիէն 2000'ի պիտի իջնայ, և 20 տարիէ բոլորովին պիտի քաշուի։ Այս բանակին համար Հայեր 60,000 թուման պիտի վճարեն. կէսը դրամ և կէսը պարէն, որ համեմատաբար պիտի նուազի՝ գունդերուն քաշուելովը։ Իսկ Հայաստանի զինուորութիւնը և ամրոցները Ռուսաց սպարապետին հրամանին ներքեւ պիտի ըլլան։ Հայեր իբր հարկ պիտի վճարեն 20 մսղալ զուտ ոսկի, 3 ձի և 6 խոյ։ Ռուսաց բարեկամին բարեկամ և թշնամիին թշնամի պիտի ըլլան, և պատերազմի առթիւ 6000 զօրք պիտի տան օգնութեան։ Եկեղեցական և առեւտրական և քաղաքական յարաբերութիւններ փոխադարձաբար ազատ պիտի ըլլան։ Երկրին հասոյթներէն պիտի հոգացուին թէ Ռուսական բանակին ծախքերը և թէ եկեղեցական և բարեգործական հաստատութեանց պէտքերը, և վերջապէս Գերմանիոյ կայսրը իրաւարար պիտի ճանչցուի երկու կողմերու միջեւ տեղի ունենալիք խնդիրներուն ատեն։ Այս ծրագիրը 20 յօդուած ունի, և 1779'ին*

պատրաստուած և 1786'ին թարգմանուած կ'ըսուի (ԴԻԻ. Դ. 737), միայն թէ փոխանակութիւնը 1789'ին եղած է (ԴԻԻ. Դ. 731)։ Ուզեցինք ծրագիրները քաղել իբրև հետաքրքրական տեղեկութիւն, թէ ոչ գործնական արդիւնք մը ունեցած ըլլալնին տեսնուած չէ։

**2201.** Պարսկաստանի գործերուն դառնալով, պիտի կրկնենք թէ Զէնտ տոհմին

**ՄԱՀՄԱՏ ԽԱՃԱՐ**

իշխանութիւնը աննշանակ դարձած էր, և կուսակալներ կամ ցեղապետներ անկախ իշխաններու պէս կը գործէին։ Միւս կողմէն հետզհետէ կը զօրանար Խաճարներու ցեղապետ Աղա Մահմատ խանը, ինչպէս կը գրեն մերոնք (ԴԻԻ. Ա. 25), կամ Աղա Մուհամմէտ խան, ինչպէս կը կոչեն օտարազգիք (ՏՊէ. 368)։ Որդի էր նա ցեղապետ Մուհամմէտ-Հիւսէյինի, և Ալի-Ատիլ թագաւորին (§ 2024) հրամանով ներքինացած էր հայիւ 6 տարեկան եղած ատեն, իսկ հայրը Քէրիմի հրամանով սպանուած էր։ Այս երկու արկածները, վրէժխնդրութեան գրգռեցին Մահմատը, երբոր չափահաս եղաւ, և անկէ ետքը ամէն միջոց, ճարտարութիւն և նենգութիւն, գթութիւն և անգթութիւն, խոհականութիւն և բռնութիւն անխտիր գործածեց, մինչև որ նախ իր հայրենական Մազանդարանի, և յետոյ բոլոր Պարսկաստանի կրցաւ տիրապետել, և 1794'ին Պարսից վեհապետ հռչակուեցաւ, թէպէտ շահ կամ շահնշահ անունը չառաւ, և թագադրութիւնն ալ տարի մը յապաղեց։ Իրեն մայրաքաղաք ըրաւ և ամրացուց Թէհրանը, իր հայրենական երկրին մերձաւորութեան մէջ, իսկ Սպահանի և Շիրազի ամրութիւնները քանդել տուաւ (ՏՊէ. 369)։ Այդ միջոցին կատարուած զանազան եղելութիւններ մեր նպատակէն դուրս կը մնան, և կը բաւականանանք յիշել թէ Մահմատ իր արշաւանքները դէպի Հայաստան ալ ուղղեց, և անհուսարսափ Հայերուն վրայ տիրեց։ Վրաստան տակաւին ընիկ թագաւորով կը կառավարուէր, բայց Պարսից գերիշխանութեան ենթարկուած էր։ Հերակլ, զոր քանիցս յիշեցինք, օգտուելով Պարսկաստանի անիշխանութենէն, Պարսից հետ յարաբերութիւնները խզած էր և Ռուսիոյ հովանաւորութիւնը ընդունած էր 1783 յուլիս 24'ի դաշնագրով (ՖԱՄ. 30)։ Մահմատ երբոր իր իշխանութիւնը ներսէն ամրացուց, բոլոր մրցակիցները՝ նոյնիսկ իր եղբայրներն ալ սպաննելով, մտադրութիւնը դարձուց Պարսկական գահուն նախկին զօրութիւնն ու ընդարձակութիւնը վերանորոգել, և այս ձեռնարկներէն մէկն ալ Վրաց թագաւորութիւնը իր հպատակութեան դարձնել եղաւ։ Ծանր բանակով մեկնեցաւ Մահմատ 1795 գարունին, ահուսարսափ տարածելով ամէն կողմ, և ուղիղ քալեց դէպի Արցախ. Շուշին պաշարեց, գունդ մըն ալ Երևանի վրայ ղրկեց (ԴԻԻ. Դ. ձե)։ Երևանի Մահմատ խանը իր բերդին մէջ ամրացաւ (ԴԻԻ. Ա. 27), իսկ Ղուկաս Մայր աթոռոյ գանձը 21 սայլով ճանպայ հանեց դէպի Տփղիս, այնտեղը ապահով կարծելով։ Գանձէն մաս մը, 6 սայլաբեռ, գանձին ընկերացող Տփղիսի առաջնորդ Անկոթ մականուն Մարտիրոս եպիսկոպոսին հետ, Մահմատի ձեռք ինկաւ, թէպէտև Ղուկաս [illegible] ընծաներով, և դրամական փրկանք վճարելով յաջողած էր Մայրաթոռը ազատ պահել Մահմատի աւարառութենէն (ԴԻԻ. Ա. ձե)։ Տփղիսի վրայ արշաւանքը Մահմատի յաղթութեամբ փակուեցաւ, և չորրորդ օրուն Վերացման տօնէ խաչի, այսինքն է 1795 սեպտեմբեր 18'ին, յետ ինն աւուրն, Պարսից բանակը Տփղիսը գրաւեց։ Անօրինակ կոտորածով մը գրեթէ ամէն այր չափահաս սրոյ ճարակ եղաւ, եկեղեցիներ կործանուեցան, ամէն բան կողոպտուեցաւ, եկեղեցականներ բոլոր սպանուեցան, և 16,000 աղջիկներ և մանչեր գերի տարուեցան (ՏՊէ. 372), իսկ Հերակլ հազիւ թէ ազատեցաւ Թելաւի լեռնակողմը ապաւինելով։ Յիշատակագիր մը կը յաւելու, թէ Դելէ Մէջլում Հայոցն էլխան, որ ամենայն որդւոց-Բեանց մտից և ելից քաղաքին հմուտ էր, իր տեղեկութիւններով դիւրացուցած է Մահմատի յաջողութիւնը (ԴԻԻ. Ա. 28)։ Ղուկաս ընդհակառակն ձեռքը մնացած միջոցները գործածեց Հայ և Վրացի գերիներ գնելու և ազատելու (ԴԻԻ. Դ. ձը)։ Գերի տարուած Մարտիրոս եպիսկոպոսն ալ փրկանաւորուեցաւ Երևանցի Ջաֆար Խուբեանց իշխանին կողմէն (ԴԻԻ. Ա. ձե), և գոյաբաժէնով և Դերի աթոռ դարձաւ, բայց

— վշտակրութեանցն յեղակարծ մահու (ԴիւԻ. Դ. 669)։ Կ'ըսուի թէ Մարտիրոսի մահը յառաջ եկած է Ղուկասի դիտողութեանց վրայ զգացած յուզումէն (ԴիւԻ. Դ. ՁԵ)։ Ղուկաս լսելով որ Էջմիածինի յափշտակուած գոյքերը, և գլխաւորապէս Ղազար կաթողիկոսի թագն ու վակասն ու շուրջառն առոր անոր ձեռք անցած են, յանձնարարութիւններ գրեց զանազան կողմեր, որ գնեն և ազատեն և աթոռ դարձնեն։ Այդ կարգին գրած է եւս — ոչինչ օգնեցին մեր գործոյն մելիք Մեջլումն (ԴիւԻ. Դ. 649), բայց կ'երեւի թէ Տփղիսի առման մէջ անոր խաղացած դերէն տեղեկութիւն չունէր, կամ թէ Մահմատի մօտ անոր գտած ընդունելութենէն օգտուիլ կ'ուզէր։

**2202.** Մահմատ Տփղիսի աւարառութենէն և կոտորածէն ետքը ետ դարձած էր աւարով, իսկ Ղուկաս կը

ՄԱՀՄԱՏԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

շարունակէր միշտ աւելի ծանր տագնապներու ներքեւ տառապիլ։ Եւ ահա միւս տարին յանկարծ լուր կ'առնուի, թէ Ռուսական բանակ մը Զապով (Zapow) զօրավարի հրամանատարութեամբ կը յառաջանայ, և իրեն հետ է նաև Յովսէփ Արղութեան եպիսկոպոս, որ յաղթական բանակին հետ Գանձակ կը մտնէ 1796 սեպտեմբերին։ Քրիստոնեայք կարծես թէ կը սկսին ոգեւորուիլ, և այլազգիք՝ և նոյն իսկ Մահմատ թագաւոր՝ չփոթութեան կը մատնուին, բայց այս անգամ ալ ակնկալութիւնք պարապի կ'ելլան։ Կատարինէ Բ կայսրուհին, այդ ձեռնարկներու հեղինակը, 1796 նոյեմբեր 16'ին կաթուածահար կ'ըլլար, և 37 ժամուան տագնապալից հոգեվարքէ ետքը կը մեռնէր միւս օրը (ՇՕԹ. 382)։ Քիչ օր ետքը Ռուսաց բանակը Գանձակ կը մտնէր, բայց կայսրուհւոյն մահուան լուրին հետ, որդւոյն Պօղոս Ա. կայսեր հրամանն ալ կը հասնէր, որ ամէն կողմերէ արշաւանքները կը կասեցնէր, և Գանձակի բանակն ալ ետ կը քաշուէր, երկիրը Թաղոմ ի յետս նոյն ամսոյն ամբողջն (ԴիւԻ. Ա. 30)։ Ղուկաս ալ պահ մը ուրախացած ու ոգեւորուած էր, բայց խոհական զգուշաւորութեամբ ձեռնարկին աւարտման կը սպասէր, երբ տարաբախտ լուրը կ'առնէ, և միաժամանակ կը լսէ, որ Մահմատ նորէն Հայաստան կ'արշաւէ, ամէն կողմ կը նուաճէ և կը քանդէ, եղբայրը Ալիղուլին ալ Երեւանի վրայ կը ղրկէ, որ Երեւանի կուսակալ Մահմատ խանը կը ձերբակալէ և կ'աքսորէ, և բռնութիւնները կ'ընդարձակէ։ Ղուկաս, այր խորախորհուրդ և գէտ, պարագաները կշռելով և մանաւանդ Արղութեանի Ռուսական բանակին մէջ գտնուած ըլլալը նկատի առնելով, կը փութայ Դաւիթ և Յովհաննէս վարդապետները ընծայիւք հանդերձ յղել — քաղաքն Ղարաբաղ, ուսկից ապահովութեան խոստումներ կ'ընդունի հրովարտակս մխիթարութեան (ԴիւԻ. Ա. 31)։ Մահմատ հետզհետէ կ'ընդարձակէ իր բռնական արշաւանքները, և 1797 մայիսի վերջին օրերը կը մտնէ Շուշի, ուսկից փախած էր Իբրահիմ դէպի Կովկասի լեռները։ Ութն օր միայն կ'անցնի Մահմատի Շուշի հասնելուն վրայ (ԴիւԻ Ա. 33), և սպանուելուն լուրը կը լսուի։ Օտարազգի պատմիչը կը գրէ թէ սպանողներն էին իր երկու սպասաւորներ, զորս նա մահուան դատապարտած էր աննշան դիպուածի մը պատճառով (ՏՊԼ. 373). Արղութեան ալ հեռուէն գրելով՝ յետոյ ծառայիցն խողխողեցան կ'ըսէ, և յունիս 6'ը սպանման թուական կը նշանակէ (ԴիւԻ. Թ. 243)։ Բայց Հայ յիշատակագիրը գործը կը վերագրէ մելիք Ջումշուտ Հայազգի իշխանին, — որոյ է տան խոյ իջեւանած էր Մահմատ, բայց նոյն իսկ իր վանատուրը կողոպտելու էր ձեռնարկած։ Ջումշուտի խորհրդակից և գործակից էր Սադըգ խան՝ մերձ հարազատ անձնապահ Մահմատի, որով կրցած էր Ջումշուտ որս- խողխող ընել ի մահէ ըմբռնախօսող բանս-արկուն (ԴիւԻ. Ա. 32), որուն մասին օտարազգի պատմիչն ալ կը վկայէ, թէ անկէ անգութ բռնաւոր մը և անկէ ճարտար թագաւոր մը չէր նստած Պարսկաստանի գահին վրայ (ՏՊԼ. 373)։ Մահմատի յաջորդութիւնը նորէն մրցակիցներ ստեղծեց, որոց մէկն էր նաև վերը յիշուած Սադըգ խան, սակայն Հաճի Իբրահիմ խան, որ Մահմատի կողմէ Թէհրանի մէջ կառավարութեան գլուխն էր, հաւատարիմ մնաց անոր յիշատակին, և նախընթացաբար անկէ յայտնուած կամքին համաձայն՝ եղբօրորդին Պապա խանը բերել

*տուաւ Շիրազէն, և չան հռչակեց Ֆէթհալի անունով։ Մահմատի օրէն Թէհրանի մէջ հաւաքուած պատանդներու ներկայութիւնը, դիւրացոյց Ֆէթհալիի անհակառակ գահակալութիւնը* (ՏՊԼ. 376)։

**2203.** *Ֆէթհալի, հակառակ իւր հօրեղբօր ընթացքին, խաղաղ կառավարութիւն սիրող յայտնուեցաւ, թող տալով որ իւրաքանչիւր նահանգի մէջ՝ բռնապետներ իբր կուսակալներ ըստ հաճոյս կառավարեն, միայն թէ ինքն ալ իւր կեդրոնին մէջ հանդարտ ապրի։ Երեւանի մէջ նստող Ալիղուլին, Մահմատի եղբայրը, քաղաքացիներու հակառակութենէն ստիպուեցաւ մեկնիլ. թերեւս եղբօրը յաջորդելու ալ ձգտումներ ունէր, բայց չյաջողեցաւ։ Մահմատ խան Երեւանի նախկին բռնապետը, որ աքսորուած էր* (§ 2202), *արտօնութիւն ստացաւ տեղը դառնալ. Իբրահիմ խան որ Կովկասի լեռները փախած էր, համարձակութիւն առաւ Շուշի վերադառնալ. և վշտաւոր և լի ամենայն արհաւրօք օրեր նորոգուեցան, ինչպէս կը գրէ Ղուկաս. և ցաւագին չեչտով կը հառաչէ, տարան այցելութեան տարջեալ հեռացոյց, ակնարկելով Ռուսական բանակին քաշուելուն, անօգնականն եմք ցրուեալ մինչեւ ցայժմ* (Դիւ. Ա. 35)։ *Ցիշատակագիրը* 1797 *նոյեմբեր* 29'*ին գիշերը՝ Օշականի մէջ Խամսեցի Յակոբ եպիսկոպոսի աւազակներէն սպանուիլը պատմելէն ետքը կը յարէ, թէ անօրէնքն Խոյեցին անողորմ, լի սրտիւ և դաժանասիրտք էին անօրէնք* (Դիւ. Ա. 37)։ *Իսկ ընդհանուր կացութեան մասին Ղուկաս կը գրէ, թէ ի դեռևս ձայն կործանութեանց և ի սպառ ողորմելի է յերկրի դառնութեան ... ժամանեալ եմք, և կոչեցեալ աղաղակէ վրանաց ... ի հասարակ* (Դիւ. Ա. 38)։ *Բռնապետներու իրարու հետ պատերազմները շարունակեցին* 1798 *տարւոյ ընթացքին մէջ, և Դավրէժի և Խոյի և Երեւանի խաներուն միջեւ մղուած թշնամութեանց մէջ Մայրաթոռն ալ կրկին և կրկին ոտնակոխ եղաւ, մինչեւ իսկ Խոյի Ջաֆարղուլին* 14 *օր վանքին մէջ մնաց իւր մարդիկներով ... և որովհետեւ ... էր ի ... Խոյոյ, իւր սե-*

ԷՋՄԻԱԾԻՆԻ ՇՈՒՐՋԸ

*փական դուռն, տատանեալ տարաբերէր Էջմիածնի շրջակաները, Բորդող լերան և Երասխաձորի կողմերը, մինչեւ որ հաստատուեցաւ Թալին, և իրեններ սփռեց զօրօք Արագած լերին* (Դիւ. Ա. 40), *հայրենական գլխուն նոր պատուհաս դառնալով։ Այսպէս* 1798 *տարին ալ ոչ Հայերուն դիւրութիւն և ոչ Ղուկասի հանդարտութիւն բերին, և միշտ միեւնոյն տառապագին վիճակն էր, որ երկրին վրայ կը ծանրանար։ Ամէն դժբախտութեանց վրայ ժանտախտն ալ սկսաւ Արցախի և Գանձակի կողմերը, և աւելի Վրաց երկիրը, մինչեւ բժշկանօք խնդրեաց Ղուկասէ Նոր արքայն Գէորգի՝ զսուրբ Գեղարդն, և կաթողիկոսն գիջաւ յղել զայն* 1798 *նոյեմբեր* 3'*ին Յովհաննէս վարդապետի ձեռօք, և ի ժամանելն, ինչպէս կը կարդանք, Աստուծոյ ողորմութեամբն փարատեալ է ախտն* (Դիւ. Ա. 41)։ *Վրաց նոր թագաւորը յիշեցինք, և աւելցընենք թէ Հերակլ, որուն* 1795'*ին Թելաւի կողմերը փախուստը պատմած ենք* (§ 2201), *նոյնտեղ հիւանդացաւ և մնաց վասն ծերութեանն, մինչեւ որ մեռաւ* 1797 *փետրուարին, և իւր աւագ որդին իրեն յաջորդեց, և Ֆէթհալիէ հաստատութիւն ստացաւ հպատակութիւն խոստանալով, բայց Տփղիսի աւերածը և ժանտախտի վախը զինքն ստիպեցին Կախեթի կողմերը մնալ* (Դիւ. Ա. 34-35)։

**2204.** *Մայրաթոռոյ արտաքին վիճակի ցաւալի պատմութիւնը, մեզ կը հասցնէ Ղուկասի կեանքին վերջին օրերուն։ Կացութիւնը բնաւ լաւանալու ակնկալութիւններ չէր ներշնչեր, մանաւանդ թէ կը վատթարանար, այնպէս որ Ղուկաս մահուանէ քիչ առաջ,* 1799 *ապրիլ* 19'*ին կը յայտարարէր, թէ եղեն յոյժ դէմ, և թէ եղեւ բնակչացն ի նեղութեանց բազմապատկութիւն տանէն* (Դիւ. Ա. 42)։ *Ղուկաս ինքն ալ իւր անձին վրայ կը կրէր տառապագին կեանքին հետեւանքները, և գրեթէ շարունակ հիւանդ էր, առանց սակայն լքանելու և գործերէ ձեռնթափ ըլլալու։ Այդ կացութիւնը պատճառ եղած էր անշուշտ, որ Ղուկաս ալ իւր վերջին օրերուն մէջ տակաւ իւր ուղղութիւնը կը բարեփոխէր,*

ՂՈՒԿԱՍԻ ՄԱՀԸ

և ինքն ալ իւր աչքը դէպ հիւսիս կը դարձնէր։ Ցիշեցինք թէ՝ ինչպէս վարանոտ վիճակ մը առած էր Ռուսաց վերջին արշաւանքէն ետ քաշուելովը, և պարտաւորուած՝ Պարսիկները չանելու կը հետեւէր (§ 2202), սակայն անցաւոր էր այդ բրածը։ Նա ամէն բան կշռելով կը զգար, թէ այլ ևս ոչ Պարսիկներէն լաւութիւն մը կրնար սպասել, և ոչ Վրացիներէն օգնութիւն։ Այդ համոզմամբ 1797 յուլիսին, Պօղոս կամ Պաւել կայսեր գահակալութենէն իբր 8 ամիս ետքը, կ'որոշէ անոր գահակալութիւնը շնորհաւորել, անոր պաշտպանութիւնը հայցել, և յատուկ հրովարտակ ալ խնդրել, ինչպէս կանուխ տրուած էր Սիմէոն կաթողիկոսին (§ 2094)։ Կայսեր ուղղուած գիրը չենք տեսած, բայց կան այդ առթիւ Նախարարապետ իշխան Աղեքսանդր Բէզպօրօտկինի, Յովսէփ Արղութեան եպիսկոպոսի, աղա Յովհաննէս Եղիազարեանի, և պարոն Մարգար Մանուչարեանցի ուղղած գիրերը (Դիւ. Թ. 218-232), որք բաւական են անոր տեսութիւնները և դիտումները պարզել։ Պօղոս կայսր, որչափ և տրչաւանքէն ձեռնթափ, բայց հարաւային երկիրներու վրայ ազդեցութիւն պահելու մտադիր, Ղուկասի առաջարկներուն լաւ ընդունելութիւն բրաւ, և խնդրուած պաշտպանութեան հրովարտակը գրուեցաւ 1798 փետրուարին (Դիւ. Դ. ՖԲ), և յանձնուեցաւ Արղութեանին, բայց Ղուկասի չղրկուեցաւ, զի հոկտեմբեր 18'ին միայն լուրը առնելով շնորհակալութիւն կը գրէ Արղութեանին և միւսներուն (Դիւ. Թ. 249), և 1799 փետրուար 12'ին տակաւին հրովարտակին և Նախարարապետին նամակին պարզ պատճէնները կը խնդրէ, յետաձգել տալով յղել զեօղ հրովարտակն կայսեր, և զնշանն վեղարին, և զշնորհն և զխաչն, ինչպէս նաև Ղազար կաթողիկոսի թագն և ուրիշ զգեստները, զորս Արղութեան աւարէն ազատած էր (Դիւ. Թ. 262)։ Ասոր վրայ պատճէնները ստանալով, և մտածելով որ իսկը ընդունելու սպասելով անհամբեր լինէր յետոյ... (Դիւ. Թ. 289), 1799 հոկտեմբեր 15'ին ուղղակի կայսեր ուղղած կոնդակով մը իւր շնորհակալութիւնը կը յայտնէ (Դիւ. Թ. 283)։ Բայց միւս կողմէն Ղուկասի վիճակը օրըստօրէ կը ծանրանար, և մահուան վտանգը կը մօտենար։ Արդէն տարի առաջ 1798 դեկտեմբերին յայտնած էր, թէ հիւանդութիւն է շնորհութենէ ամենայնի բժշկեալ՝ առողջացաւ իւր վրայ և թագաւորեցոյց մինչ ի նոյեմբերի վերջին աւուրսն։ Թէպէտ այս անգամ առողջացաւ (Դիւ. Թ. 250), բայց միւս տարին աւելի ծանրացաւ հիւանդութիւնը, ուսկից չկրցաւ ազատիլ, և 1799 դեկտեմբեր 28 չորեքշաբթիի վրայ եկող գիշերը, ժամը 8'ին որ է ըսել կէս գիշերէն ետքը հոգին աւանդեց և հինգշաբթի առաւօտուն, դեկտեմբեր 29, Որդւոց Որոտման տօնին օրը յուղարկաւորութեան կարգը կատարուելով, մարմինը հանգուցին Ս. Գայիանէի գաւիթին հարաւակողմը (ՇԱՀ. Ա. 232)։ Ցիշատակագիրներէն ոմանք դեկտեմբեր 27 կը գրեն Ղուկասի մահուան օրը, չենք գիտեր ինչ պարագայէ չփոթուելով, զի Որդւոց Որոտման տօնը զոր ամենքն ալ կը յիշեն, հինգշաբթի՝ դեկտեմբեր 29'ին հանդիպած է, և Ղուկաս նախընթաց գիշերը վախճանած է։ Ղուկաս ընտրուած և օծուած էր 1780 օգոստոս 2'ին (§ 2149), որով 19 տարի և 5 ամիս պաշտօն վարած կ'ըլլայ (ՇԱՀ. Ա. 231), կամ աւելի ճշդելով, 19 տարի 4 ամիս և 26 օր։

**ՂՈՒԿԱՍ ՇԻՆԱՐԱՐ**

**2205**. Պատահարներու չարքը չընդհատելու և ժամանակին կացութեան նկարագիրը ամբողջապէս տուած ըլլալու համար, զանց ըրինք Ղուկասու գործունէութեան յատուկ կէտերը լուսաբանել, որոց վրայ կը պարտաւորուինք անդրադառնալ մահը պատմելէ ետքը, բայց այդ ձեւն ալ կրնայ իբր գնահատում ծառայել նորա արդիւնաւորութեան և արժանաւորութեան։ Մայրաթոռին կրած աղէտներուն և անընդհատ տեւող արկածներուն պատմութիւնը, անհաւատալի կը դարձնեն թէ Ղուկաս կրցած ըլլայ շինարար ձեռնարկներ կատարել, թէպէտեւ անոնց մեծագոյն մասը իւր առաջին տարիներու մէջ կատարուած են, որք համեմատաբար հանդարտ անցան։ Բայց միւս կողմէն ալ աւերածները նորոգութեանց ստիպողականութիւն կը ստեղծէին, և իւր ազդեցութիւնն ու հեղինակութիւնը զօրաւոր

փաստ կ'ըլլար կարող ազգայինները յատուկ նուիրատուութեանց յորդորելու։ Այդ մասին բաւական ըլլայ կատարուած նորոգութիւններէն քանիները յիշել։ Մայր տաճարին դուրսէն Ներքնաշարեան դուռ կողք դրանն, որոնք այժմ այլեւս չկան, նորոգուեցան Կ-Պոլսոյ ամիրաներէն Ապուչեխցի Յարութիւն Աստուածատուրեանի ծախքով (ՇԱՀ. Ա. 35)։ Իսկ տաճարին չուրջը պատող սալայատակը շինուեցաւ Սուրաթի բնակիչ Գերաքեանց Յովհաննէսի ծախքով (ՇԱՀ. Ա. 36)։ Ամարան սեղանատունը, համակ կոփածոյ սեղաններով և նստարաններով, և հայրապետական աթոռով կառուցուեցաւ Ջուղայեցի Խալդարենց Մարգարի ծախքով (ՇԱՀ. Ա. 102)։ Ձմերան սեղանատունը ընդարձակուեցաւ Պաշպագիրկեան Յովհաննէս ամիրայի ծախքով։ Սեղանատունին վրայի համբարանոցը շինուեցաւ Թոքաթցի Նիկողայոսի ծախքով (ՇԱՀ. Ա. 103)։ Սանահնի վանքը որ է բազում ամաց հետէ ամայացեալ կայր, նորոգեալ պայծառացաւ, հաւանաբար Արղութեանց ծախքով։ Ասոնցմէ զատ Ղուկաս վանքին քանքանր կամ աղբիւրն ալ նորոգեց, վանքին զանազան մասերուն վերնայարկեր աւելցուց, սենեակներ ընդարձակեց և չատցուց, և ուրիշ մասեր ալ նորոգեց և ամրացուց։ Շինութեանց մի մասը 1784 և 1785 տարիներուն կատարած է իւր կաթողիկոսութեան սկիզբը, բայց մինչև վերջն ալ նոյն հոգւով չարունակած է, ինչպէս կը գրէ 1797'ին, թէ երբ իրենց կեանքին համար անյոյս են, ուր կը մնայ որ կարենան շինութիւններ ալ կատարել (ԴԻՒ. Դ. ծբ-ծգ)։ Պէտք է դիտել տանք ևս, որ բարերարները հեռու տեղերէ յաջողած է ճարել, զի Մայրաթոռի չրջակայից մէջ հնար չէր նուիրատուներ հայթայթել։

2206. Բայց Ղուկասի չինարարութեան ամենամեծ արդիւնքը կաթողիկէի ներքինն է։ Մայր տաճարը վերջին անգամ նորոգութիւններ ստացած էր Աստուածատուր կաթողիկոսի օրով, երբ պատերն ալ դողդողեալ էին ի տեղի տեղի և անհեթեթ ծակեցան (01 ԱՐՐ. 327), բայց անկէ ետքը ամէն մասեր հետզհետէ խանգարուած և խաթարուած էին, մինչև իսկ կամարները մաշած էին և անձրեւը ներս կ'անցնէր։ Սիմէոն կաթողիկոս անհրաժեշտ դարմաններու ձեռնարկած էր Սահակ ճարտարապետի ձեռքով, բայց անյաջողութեանց, և դժուարութեանց, և մանաւանդ ծանրագոյն վճարուց և հիւանդութեանց արգելք եղած էին ձեռնարկը լրացնել (01 ԱՐՐ. 328)։ Հետեւաբար չարունակութիւնը պարտք մնաց Ղուկասի վրայ, որ ընտրութենէն անմիջապէս ետքը գործի ձեռնարկեց Գասպար ճարտարապետին ձեռքով, զի գրեթէ տաճարին կործանման վտանգ կը զգացուէր։ Ցիշատակագիր մը այդ մասին մանրամասն տեղեկութիւններ տուած ատեն կը գրէ, թէ աջակողման տասներկու մեծ սիւները խախտեցեալ և բեկբեկեալ էին (01 ԱՐՐ. 328) և հարկ էր անոնցմէ սկսելով տաճարին չինուածը ապահովել, ինչպէս որ ալ կատարուեցաւ, Ագուլեցի Կարապետ Պապայեանի և Կեսարացի Խրտըր Աբրահամեանի ծախքով (ՇԱՀ. Ա. 37)։ Երբոր ձեռք կը զարնեն եկեղեցւոյն կամարներն ու որմերը յարդարել, երեւան կու գան ի վաղնջուց ժամանակաց խախտեցեալ մէջէն, և հնութեան բեկբեկեալ և ջախջախեալ դրանն, ու երկաթեղէն փայտութեանն, այնպէս որ ճարտարապետն ալ զարհուրեալ կը չփոթի վասն երկեղի մահուան, զի մեծ կոթողէկէ գմբեթն ի վերայ գլխոյ կործանման էր շինեցեալ, իսկ կամարները՝ գմբէթին ծանրութենէն էին բեկտեալք, և կրնային վար գալով ներքեւը եղողները վտանգել։ Երբոր Ղուկասի լուր կը տրուի լուսարար Մարկոս եպիսկոպոսի ձեռքով, անձամբ կու գայ վնասները տեսնել, և մինչև իսկ ելեալ ի գլուխ սանդխոյն և լաստակներուն վրայ պտտելով, ճարտարապետին պէտք եղած կերպերն ալ կը ցուցնէ խորով տրամածութեան հանճարոյն, առաջ կամարները մեքենայից նախադրել, և յետոյ մի մի շինել տարբերան հանել, և տեղը ընտիր ընտիր կամարատարբերան շինել (01 ԱՐՐ. 328)։ Եթէ ճարտարապետն ալ Ղուկասի կը դիմէր, պէտք է հետեւցնել թէ Ղուկաս արուեստական տեսակէտէն ալ հմտութիւն ունէր, և իւր ձեռնարկներուն իսկապէս տէրն էր։ Այդպէս հետզհետէ տաճարին շինուածը ապահովելէն, և տանիքին և պատերուն և գմբէթին վրայ պահանջուած նորոգութիւնները

МАЅՐՏԱՃԱՐԻ ՆՈՐՈԳՈՂ

աւարտելէն ետքը, ներքինը պարզ ձեւով կը մնայ, զոր շինուածոյն և զարդարանէն այլափոխեցեալ կ'անուանէ յիշատակագիրը (01 ԱՐՐ. 329)։ Սիւներու նորոգութեան թուական պիտի ընդունինք 1786 տարին, համաձայն սեղւոյն վրայ գրուած յիշատակարաններուն (ՇԱՀ. Ա. 37)։ Մնացած նորոգութիւններն ալ միեւնոյն տարին կատարուած պէտք է ըսուին։

**ՆԵՐՔԻՆ ՆԿԱՐՆԵՐԸ**

2207. Սակայն հնար չէր տաճարին ներքինը [illegible] վիճակին մէջ անշուք պահել։ Ոչ միայն Ղուկասի արուեստական ճաշակը կը պահանջէր զայն զարդարել, այլև պարտք մըն էր վերանորոգել ինչ որ Աստուածատուրի ժամանակէն կար, և նոր շինութիւնք ստիպեր էին ու [illegible] նշմարանք ինչ հնագոյն գործոց և անհեթեթ ծաղկանկչաց, զի և [illegible] մի հնագոյն պատկերս տեղերնէն վերուցած էին (01 ԱՐՐ. 328)։ Ղուկասի ճաշակն և արուեստական հմտութիւնը չէր ներեր նորէն անհեթեթ ծաղկանիշեր և նկարներ դնել, ուստի որոշեց ժամանակին նշանաւորագոյն նկարիչին յանձնել գործը, որ էր Յովնաթան Յովնաթանեան, Տփղիսի արքունիքին արուեստագէտը, որդի Յակոբայ և թոռն Շոռոթեցի Յովնաթանի, աւելի ծանօթ Նաղաշ մականունովը իբրև նկարիչ, և ընտիր քերթուածներովը իբր աշուղ կամ երգիչ, և որ վախճանած էր 1722 նոյեմբեր 28'ին (ԶՕՊ. 113)։ Հերակլ թագաւոր հաճեցաւ Յովնաթանը ղրկել Էջմիածին, ուր եկաւ աշակերտօքն հանդերձ։ Պետրոս և Գաբրիէլ [illegible] ձեռքով, [illegible] ընել տուաւ տաճարին ներքինը, և ըլլալիք գծագրութեանց ծրագիրները Ղուկասի գնահատման ենթարկեց, և [illegible] նորէն գործի ձեռնարկեց։ Ինքն Ղուկաս ալ [illegible], ու [illegible], և [illegible] զաղափարները [illegible], և [illegible] չարունակ գործին կ'առաջնորդէր (01 ԱՐՐ. 329)։ Երկարապատում եղած ըլլալ կը նկատէինք, եթէ Մայրտաճարի նկարներուն բացատրութիւնը տալ ուզէինք։ Բաւական ըլլայ ըսել, որ բոլոր տաճարը իր ամէն մասերով ծաղկած և նկարուած էր, և պատշաճ դասաւորութեամբ հին և նոր կտակարանէ և ազգային յիշատակներէ պատկերներ կային ամէն կողմ, որոնք էին [illegible] (01 ԱՐՐ. 330)։ Հետազօտիչներ դիտած են որ ծաղկանկարներուն մէջ աւելի Պարսկական ոճը կը տիրէր, իսկ կենդանագիրներուն մէջ աւելի Իտալականը, բայց օտար ազդեցութիւնը [illegible] կրած չէր, և ամենայն ինչ պատշաճեցուած էր Հայ ճաշակին և գեղեցկութեան (ԶՕՊ. 28)։ Այնպէս որ հնար էր համարձակօրէն՝ Հայութեան համար [illegible] անուանել Յովնաթանի և իր աշակերտներուն արտադրութիւնները (ԶՕՊ. 26)։ Մենք ալ ժամանակին տեսած ենք Մայրտաճարը իր Ղուկասեան և Յովնաթանեան չքեղութեան մէջ, և անկեղծօրէն զմայլած, Իտալական ոստաններուն արուեստագիտական գանձերը տեսնելնէս ետքը։

**ԴԱՐՁԵԱԼ ՆԿԱՐՆԵՐԸ**

2208. Գործին մանրամասնութեանց մտնելով պիտի աւելցնենք, թէ ծաղկանկարներ և զարդեր ընդհանրապէս որմանկարներ էին ծեփերուն վրայ գծուած, և երբեմն ալ մարմարի վրայ, իսկ կենդանագիրները [illegible] նկարագրուած ու չքեղազարդարուած էին (01 ԱՐՐ.330), և յարմար տեղեր զետեղուած։ Նկարներուն մասին խօսած ատեն Շահխաթունեան կը գրէ, թէ անոնց մէջ [illegible] Ստեփաննոսի Լեհացւոյ, և [illegible] Յովնաթանայ (ՇԱՀ. Ա. 45)։ Արդ գիտենք թէ Ղուկասի ատեն չէին ապրեր այլևս ոչ Ստեփաննոս Լեհացին և ոչ Յովնաթան՝ նկարիչին մեծ հայրը։ Ուստի պէտք է հետեւցընել, թէ անոնք մասնակցութիւն ունեցած էին Աստուածատուրի ժամանակ կատարուած նկարներուն, և թէ վերջին Յովնաթանն ալ ազդուած է անոնցմէ, զուցէ և ինչինչ ալ կտաւեայ կենդանագիրներէն, այն ժամանակէ մնացածներ են, զի յիշուած ալ կը գտնենք թէ պատկերներէն [illegible] վերջին Յովնաթան [illegible] (01 ԱՐՐ. 330)։ Աւելցնենք թէ նկարիչ Յովնաթան եկեղեց-

*ւոյ նկարներէն զատ, աշխատած է խաչվաններուն նորոգութեան ալ, զորս Ղուկաս եւ չեղուղորդել զանունդ կերպարանօք* (01 ԱՐՐ· 330)։ *Ծախքին հայթայթման համար Ղուկաս կը յայտնէ, թէ ինձ գոյժով տուեալ է յօրինել ծաղկեցող Տէրոց՝ ծաղկեցուցի հանդերձ խորհրդարանով պատկերօք, որ ըսել է թէ յատուկ բարերար նուիրատու մը չեղաւ, այլ ամէն կողմերէ նուիրահաւաքութեամբ գլուխ հանուեցաւ բազմածախս ձեռնարկը։ Իսկ ժամանակին համար յատուկ արձանագիրը* 1786 *թուականը կը ցուցնէ* (ՏԱՀ· Ա· 37)· *բայց յիշելով սիւներուն և կամարներուն նորոգութիւններուն ալ նոյն* 1786 *տարին կատարուած ըլլալը* (§ 2206), *և նկատելով նկարներուն թիւն ու տարածութիւնը, անհնար կը գտնենք նոյն տարւոյն մէջ գործին աւարտումը, և ստիպուած ենք լոկ սկզբնաւորութիւնը դնել* 1786*'ին, իսկ աւարտիլը յետաձգել, զի յիշատակագիրն ալ գործը երկարած կ'ըսէ մինչեւ ցհինգ և վեց ամ* (01 ԱՐՐ· 330), *որ է ըսել մինչեւ* 1791 *կամ* 1792։ *Ըստ այսմ աշխատութիւնները շարունակած են տեղական բռնապետներու փոխադարձ կռիւներուն միջոցին* (§ 2198), *որք Էջմիածինի վրայ շատ չծանրացան, իսկ աւարտած էին երբոր Մահմատ Խաճար Հայաստանի արշաւանքներուն ձեռնարկեց* (§ 2162), *և Ղուկասի վրայ բաւական ծանրացան չինուածն ու նկարուածն անեղծ պահելու տագնապները։ Սակայն ինչ որ այն ատեն աւերիչ ասպատակին ձեռքէն ազատեցաւ, դար մը միայն ապահով կեանք ունեցաւ, իսկ այժմ դժբախտաբար կորած ու ջնջուած է բոլորովին։ Կաթողիկոսի մը անհասկանալի քմայքը եղծած է բոլոր այդ շքեղ զարդերը* (ԶՕՊ· 26), *այնպէս որ նոյն կաթողիկոսի, Մկրտիչ Խրիմեանի, հիացողներն ալ համարձակած են գրել, թէ նա ամէն բան քանդած և ճմլուած է անհաւատալի վանդալութեամբ* (ԶՕՊ· 8)։ *Որմանկարներէն ազատած է միայն գմբէթը, Պետերբուրգի Հնագիտական Ընկերութեան գունաւորուած մեկնագրութեան շնորհիւ* (ԶՕՊ· 26)։ *Իսկ կտաւեայ պատկերներէն մի մասը ջնջուած է բոլորովին, մի մասն ալ անշուշտ գիւղերու եկեղեցիներ զարդարած* (ԶՕՊ· 19), *և* 120 *պատկերներէն հազիւ* 20 *հատ անխնամ կերպով մնացեր են թանգարանին մէջ նետուած, բայց կը լսուի, թէ միտք կայ նորէն զետեղելու։*

**2209**· *Ղուկասի շինարարութեան մասին խօսելէն ետքը պէտք է անցնինք անոր*

ԴԱՒԱՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹԻՒՆ

*ուղղամիտ դաւանութեան կէտը լուսաբանել։ Այդ բացատրութեան կը ստիպուինք, Մուրատեան Մելքիսեդեկ եպիսկոպոսի մէկ անզգոյշ ակնարկէն, չուզելով ուրիշներուն հետ՝ զայն ԱՆՀԵԹԵԹ օխուլանք անուանել* (ՄՈՎ· 312)։ *Մուրատեան կը գրէ թէ Սարգիս Թէքիրտաղցի վարդապետին Էջմիածին գալուն վրայ՝ Ղուկաս կամք ունեցած ըլլայ Հայաստանեայց եկեղեցին միացնել Հռոմայ եկեղեցւոյն հետ. և թէ իր վրայ կասկածը եղբայրք ասելով կերպարանք կ'առնու, ասոյի և Ղուկաս ասորէկ կը խոստանայ Էջմիածնի միաբաններէն, և կ'աքսորէ, ասկայն յետադարձութեամբ Վերջ Հերակլ կայսեր կ'ուղարկէ, և գաղտագնաց կը փախչի ի Տփղիս, և անդի յԱսորոց* (ՄՍԼ· 592)։ *Ղուկասի ամբողջ կեանքը և գործունէութիւնը տուինք, և անոր ոչ մի մասին մէջ հնար չէ ազմեցնել այդպիսի տարօրինակ պատահար մը։ Ղուկասի թղթակցութեանց շարքը* (ԴԻՒ· Դ·), *և Արղութեանի հետ ունեցած յարաբերութիւնները* (ԴԻՒ· Թ·), *և կարեւոր յիշատակագրութիւններ* (01 ԱՐՐ· 183), *և իւր գերեզմանը* (ՏԱՀ· Ա· 232), *այսօր յայտնի են, և քայլ առ քայլ կը պատմեն Ղուկասի կեանքն ու վախճանը, և այս տեսակ՝ իբրաւ ԱՆՀԵԹԵԹ ենթադրութիւնն իսկ կը մերժեն, որով մեզի հարկ չմնար պատճառաբանութեամբ անոր անհիմն ըլլալը ցուցնել, զոր ուրիշներ ալ կանխած են հերքել* (ՄՈՎ· 313)։ *Մուրատեանէ առաջ Փափազեան՝ լոկ կասկած մը քսած էր Ղուկասի հայադաւան ուղղափառութեան վրայ, գրելով թէ էր աշակերտութենէ Յակոբեան արքեպիսկոպոսի Բասենցւոյ, և չէ հմուտ էր ուղղափառ ճշմարտութեան, գրոյին միտքովը՝ հռոմէադաւանութեան, աշակերտակից Նորին Սարգիս վարդապետ Թէքէրտաղցի՝ գնաց առ նա ի գտանել շնորհ միաբանութեան ազգին Հայոց ընդ եկեղեցւոյն Հռոմայ։ Իսկ ինչ որ անկէ ետքը կը գրուի, թէ չկարաց ի կատար ածել զերդումն իւր, թէ խոստանգունեցաւ ղամս ինքն հինգ, և թէ Տփղիս և անկէ Եւրոպա փախաւ* (ՓԱՓ· 936),

ոչ Ղուկասի այլ Սարգիսի համար բսուած է Փափազեանէն, մինչ Մուրատեան պարզապէս անզգոյշ անմտադրութեամբ Ղուկաս կաթողիկոսին վրայ իմացած է։ Այդ պարագաներն ալ յապաւելով, երբեք չենք մարտուիր Ղուկասի հռոմէադաւանութեան միտած ըլլալը, վասնզի եթէ պահ մը Բասենցիին գործակից եղած էր, այն ատեն Բասենցին ալ հռոմէադաւանութենէ հեռու էր։ Ղուկաս Սիմէոնի հարազատ աշակերտ էր, և միշտ Մայրաթոռի մէջ ուղղամիտ հայադաւանութեան պաշտպան եղած էր, իբր ընդհանրական և բազմաշխարհ գահոյ մերոյ լուսոյ սրբոյ աթոռոյս Էջմիածնի (01 ԱՐՐ. 183)։

**2210**. Նկատառութեան արժանի կէտ մըն է, որ Ղուկաս երբ հռոմէադաւանի մը կողմէ իբր իրենց հակամէտ կը ցուցուի, ուրիշ հռոմէադաւանի կողմէ իբր անգութ հալածիչ կը մեղադրուի։

**ՍԱՐԳԻՍ ԹԷՔԻՐՏԱՂՑԻ**

Սարգիս Թէքիրտաղցին, Բասենցիէ ձեռնադրութիւն է առած անոր Թրիէստ գտնուած ատեն, 1782'էն առաջ. և սեւակ մը նախանձայուզութեամբ մտադրած է Էջմիածնի վրայ ազդեցութիւն գործելով, հռոմէադաւանութեան ընդարձակուելուն աշխատիլ, և աշխարհականի ու հայհռոմ եկեղեցականի կերպարաններու ներքեւ Էջմիածին հասնելով կաթողիկոսին ալ ներկայացած է, յորդորելով որ կաթոլիկութիւն ընդունի և տարածէ։ Հռոմէադաւան պատմողն ալ կը վկայէ, թէ կաթողիկոսն ընդդիմացաւ և այս գործոյս անգործադրելի հնարից, միայն Սարգիսի անձին խնայելով խրատեց չտալ ձեռնել և երթալ։ Այսչափն ալ բաւական էր հաւաստելու թէ Ղուկաս ոչ մի միտում ունեցած չէ հռոմէական կողմը։ Ուրիշ պատմական աղաւաղում ալ գործուած է գրելով, թէ Ղուկասի վրայ եղած հռոմէականութեան կասկածը պատճառ եղած էր, որ կաթողիկոս ընդունելութեան առաջին թուղթերը չէր ուզեր ճանչնալ (ԳԱԼ. 290)։ Վասնզի մենք արդէն տեսանք, թէ Էջմիածինի մէջ երբեք չընդունելու նշան չտրուեցաւ (§ 2153), և թէ բոլոր հակառակութիւնք Զաքարիայի անձնական վիրաւորանքէն յառաջ եկած էր (§ 2151)։ Սարգիսին հետ ունեցած վարմունքին դառնալով, Ղուկաս զայն եպիսկոպոսաց ատեանին առջեւ կը հանէ։ Սարգիս կը ծեծուի, կը խոշտանգուի և կը փակուի, և վերջէն շղթայակապ մութ բանտ կը նետուի։ Թէպէտ 20 օր ետքը կը փախչի, բայց նորէն կը ձերբակալուի, և շղթայակապ կը բանտարկուի, իսկ հիւանդանալուն պատճառով առանձին խուց կը փոխադրուի։ Այդ բաները կը կատարուին 1788'է 1790 տարիներու միջոցին (ԳԱԼ. 291), որով Սարգիսի Էջմիածին գալը 1787'ին վերջերը յարմար կ'ըլլայ նշանակել, երբ Արցախի շարժումին և Իբրահիմի հարստահարութիւններուն պատճառով (§ 2196), վտանգաւոր կը նկատուէին արտաքին յարաբերութեանց կասկածները։ Իսկ Սարգիս Էջմիածինէն Սեւան կը փոխադրուի, և այդ աքսորին մէջ 3 տարի և 3 ամիս կը մնայ, և արտաքին միջնորդութեանց շնորհիւ նորէն Էջմիածին կը բերուի, և թեթեւ բանտարկութեամբ տարի մը եւս կը մնայ, մինչեւ որ կը յաջողի փախչիլ, և տարի մը աստանդական թափառումներէ ետքը Կ-Պոլիս կը գտնուի, 1796 մայիս 13'ին (ԳԱԼ. 293)։ Փախուստը 1795'ին դնելով, Սարգիսի Էջմիածինի կողմերը մնալը պէտք կ'ըլլայ իբր 7 տարի ըսել, և ոչ պակաս քան հինգ (ՓԱՓ. 936)։ Թէքիրտաղցի Սարգիսին քաշած նեղութիւնները, որոնք Ղուկասը հալածիչ ցուցնելու համար կը պատմուին, գոնէ հռոմէադաւանութեան հակամէտ չըլլալուն հաւաստիք մը կը դառնան։ Պատմութիւնը ներքին ադբիւրներէ քաղուած չըլլալուն, չենք կրնար Սարգիսի ընթացքին վրայ աւելի մանրամասնութիւններ տալ, և թէ ինչ անտեղի արարքներ իւր վրայ հրաւիրեցին կաթողիկոսական և եպիսկոպոսական ատեանին խստութիւնները։ Ամէն աթի մէջ հռոմէականները, որք Լատինական հաւատաքննութեան փառաբանողներն են, չպիտի կարենան մեղադրել Հայ եկեղեցւոյ դաւանութեան և իշխանութեան դէմ ելլողներուն մասին գործածուած խստութիւնները։

**2211**. Ղուկասի դաւանական հաստատամտութիւնը իբր անգութ հալածողութիւն ցուցնելու համար յառաջ կը բերուի, Ախըլցխացի Սահակ քահանայի դէպքն ալ։ Սահակ իւր հայրենական հայադաւան եկե-

ղեցւոյն հաւատարիմ անձ մը եղած է սկիզբէն, Անկոթ Մարտիրոս եպիսկոպոսի աշակերտած, և անոր Ախըլցխայի մէջ վարած պաշտօնին գործակցած (§ 2097),

**ՍԱՀԱԿ ԱԽԼՑԽԱՑԻ**

1776'ին Ախլցխայի քահանայ ձեռնադրուած, միշտ կաթոլիկներուն դիմադրած, կաթողիկոսէ նուիրակ ղրկուած, և իւր ուղղութեան համար Զաքարիա պատրիարքէ ալ սիրով ընդունուած։ Սահակ 1785'ին առեններր առաջին անգամ Կ-Պոլսոյ մէջ կաթոլիկներու հետ շփում կ'ունենայ, և իբր թէ [illegible] կաթոլիկ կ'ըլլայ. բայց 1791'ի զատկէն ետքը, որ ապրիլ 13'ին կը հանդիպէր, Ախլցխայի մէջ օր մը պատարագի մէջ կաթողիկոսէ առաջ Հռոմի պապին անունը կը յիշէ (ԳԱԼ. 295), և անկէ կը ծագի Ախլցխայի մէջ կրօնական յուզում մը, ուր կանուխէն ալ կաթոլիկութեան սերմեր կը մնային (§ 2097)։ Կաթողիկոսը [illegible] կը գրէ [illegible] Հաճի Բաբա վաճառականին (ԴԻԻ. Դ. 554), և նա ալ կուսակալին ձեռքով [illegible] Էջմիածին կը ղրկէ ըմբոստ քահանան (ԳԱԼ. 295)։ Թերեւս Սահակի բան մը չըլլար, եթէ զատուէր և կաթոլիկ եկեղեցի երթար, բայց Հայ եկեղեցւոյն մէջ իւր կաթողիկոսը նախատել, և օտար հայրապետի անունը տալ, կանոնազանց ըմբոստութիւն էր։ Արդ որովհետեւ [illegible] (ԴԻԻ. Դ. 555)։ Ուրիշներ կ'աւելցնեն, թէ թշնամանքներով աքեմը հանեցին, մօրուքը ածիլեցին, երեսը սեւցուցին, և իշու վրայ նստեցնելով ձաղանքի ենթարկեցին (ԳԱԼ. 295), որոնք ժամանակին սովորաբար գործածուած պատիժներն էին, և կրնան [illegible] բացատրութեան իբր մանրամասնութիւններ առնուիլ։ Անոր վրայ խիստ բանտի ալ կ'ենթարկուի, բայց միւս տարին, 1792'ին, Ախլցխայի կուսակալին զայն խնդրելուն պատճառով, կաթողիկոսը զայն դանակոծել և գլուխը գերծել տալէ ետքը, տաճկական զգեստ հագցնելով յանձնել կու տայ (ԳԱԼ. 296), Տաճիկներէ գտած պաշտպանութեան ակնարկելով։ Սահակ՝ [illegible] տուն կը մտնի, [illegible] (ԳԱԼ. 296)։ Արդ եթէ այս պարագան ստոյգ է, քանի որ Սահակ արդէն իրեններուն յանձնուած էր, և շատ օրերէ իվեր Էջմիածինէ հեռացած էր, զինքը տանողներ կամ Ախլցխայէ զինքը դիմաւորողներ պէտք է պատասխանատու սեպուին։ Սահակ քահանային դիպուածը յայտնապէս Հայ եկեղեցւոյ նախատանաց և Հայոց հայրապետին դէմ ըմբոստութեան խնդիր է, և ըստ այնմ ալ պատժուած է։ [illegible], կը գրէ Ղուկաս կաթողիկոս (ԴԻԻ. Դ. 555), ակնարկելով Սահակի առաջին գործունէութեան և ուղղութեան։

**2212.** Ղուկաս կաթողիկոսի մասին՝ Փափազեանի կեղծմտօրէն և Մուրատեանի միամտօրէն յարուցած կասկածը իսպառ փարատելու համար, աւելորդ չենք սեպեր, անոր յայտարարութիւններէն քանի մը տողեր յառաջ բերել, քաղելով իւր գրած նամակներէն։

**ՂՈՒԿԱՍԻ ԸՄԲՌՆՈՒՄԸ**

Ըստ այսմ 1870 նոյեմբեր 1'ին Ափխազաց Մաքսիմոս կաթողիկոսին գրելով շնորհակալութիւն կը յայտնէ, որ [illegible] (ԴԻԻ. Դ. 55)։ Ռուսիա գաղթած Հայերուն ուղղած և 1781 դեկտեմբերին գրած շրջաբերականով, երբ կը հրամայէ առանց հայրապետական կոնդակի ներկայացող եպիսկոպոսներէն և եկեղեցականներէն զգուշանալ, յատկապէս կը յիշէ անոնք, զորս ձեռնադրած են՝ [illegible] կոչուածները, որոնք [illegible] (ԴԻԻ. Դ. 296)։ Նոյնպէս 1782'ին Բերիացիներու ուղղած օրհնութեան կոնդակով կը պատուիրէ [illegible] (ԴԻԻ. Դ. 329)։ Նոյն միտքով գոհունակութիւն կը յայտնէ 1782 մա-

*յիս 20'ին, Վրաց Հերակլ թագաւորին, որ վերջինդ լինելով ճշմարտութեան, և ջանալով հերքել զզօրութիւն ողորմութեան, հրամայած է ի յեկեղեցւոյս մերժել հեռացուցանել, որպէս զի խոտորեալն ի մոլեկան աղանդն այն՝ ուղղութեան բերուին (ԴԻՒ. Դ. 383)։ Այդ քանի մը տողեր բաւական ըլլան հաստատել Ղուկասի ըմբռնումները համբերատարութեան մասին, և թէ որչափ հեռի էր նա համբերատարութեան հակամէտ ըլլալէ։*

**2213.** *Ղուկասին վրայ աննպաստ խօսողներ կան նաև անկախաբար համբերատարութեան տեսակէտէն, և*

ԱՊԱՇՆՈՐՀ ՄԸ ՁԵՌ

*այսպէսներուն արձագանգ եղած է Մեսր Մաշտոց, գիրի առնելով ինչ որ լած է, կ'ըսէ, ի հնասորոց մաքանեաց աղօթոյն և յարձանագրաց ծերոց (ՄՍՐ. 12)։ Բայց քանի մեր օրերուն կը մտնենք, այդ տեսակ զրոյցներ կամ փնահատումներ երթալով կը բազմապատկուին, և կը տեսնուի թէ անձնական տեսակէտներ ամկաւին ջնջուած չեն։ Հետևաբար դժուար և դժպհի կ'ըլլար ժամանակակից և գրեթէ ժամանակակից անձերու վրայ համարձակօրէն խօսիլ։ Առով մէկտեղ մենք պարտաւորութիւն կը սեպենք դժուարութենէ չխուսափել, և մեր ստանձնած պատմագիրի պարտքը անաչառութեամբ կատարել։ Այդ նպատակով հարկ կ'ըլլայ ոչ այնչափ խօսողներուն կամ գրողներուն հնասորաց կամ արժանահաւատ լինելուն վրայ հիմնուիլ, որչափ իրողութիւնները կշռել իրենց իսկութեան մէջ, և կըշռադատութեան դնել զուգընթաց պարագայից հետ։ Մաշտոցի յառաջ բերած մեղադրանքներուն առաջինն է աղաչաւորութիւն առ եկեղեցւոյ, և իբր հաստատութիւն կը յիշուի թէ Սահակ և Մկրտիչ եպիսկոպոսներուն հետ հաւանութեամբ է վարուեր, որով անոնք պարտաւորուեր են հեռի լինել զմայլութեան խորհրդոց ի միջոցաւ ի մշնադարէից անդր, ... հասարակաց մաքանեացն էին բնակարան (ՄՍՐ. 10)։ Բայց եթէ այս միայն է Ղուկասի ապաշնորհութեան փաստը, մենք համարձակօրէն պիտի եզրակացնենք, թէ յիշեալ երկու եպիսկոպոսներ, Մկրտիչ և Սահակ, որոնք Մաշտոցի պատմութեամբ գլխաւոր դերը վարած էին Ղուկասի ընտրութիւնը յաջողցնելու մէջ (§ 2149), յատկնութիւն ունեցած են առանձնաշնորհեալ դիրք մը վայելել ուրիշ միաբաններուն վրայ, նոյն իսկ հայրապետական վեհարանի մէջ բնակութիւն հաստատելով, ինչ որ Ղուկաս ուզած չէ ներել, և անոնց պահանջքը դոհացընել։ Այս տեսութեամբ Ղուկաս աւելի յարգելի պէտք է նկատուի, եթէ առանձնաշնորհութեան պահանջողներուն դիմադրելու ողջմտութիւնը ունեցաւ։ Թող որ մենք արդէն տեսանք թէ Սահակ Փառակեցին երբեք Ղուկասի պաշտպան եղած չէ (§ 2149), և միայն գործին վերջանալէն ետքը իրեն արժանիք սեփականելու ձգտումներ ունեցած է։ Սա նոյն այն Սահակն է, որ Զաքարիան ալ սպանելու յանդգնեցաւ (§ 2186)։*

**2214.** *Աւելի ծանր մեղադրանք մըն ալ կը յիշէ Մաշտոց, որ է օտարական ուրացութեան հանդերձ ծաղրածութեամբ։ Ասոր ալ իբր հաստատութիւն յառաջ կը*

ԱՐՏԱՔԱՍԵՐ ՄԸ ՁԵՌ

*բերէ, թէ զծեր եղեւ մեր զօրավարելով զանձամբ ... և ... (ՄՍՐ. 10)․ թէ կարողագոյն միաբանները աքսորեց ... և ..., որպէսզի ... զորս։ Ասոնք թէպէտ ... , բայց և զանձինս և ... , և թէ ուրիշ միաբաններ ալ ... , փոխանակ ի ... ։ Վերջապէս ամբաստանութեան նիւթ կ'ընէ նաև, թէ աթոռը ... լինելութեամբ թողուց (ՄՍՐ. 11), զոր ուրիշներ հարիւր հազար թուման կը հաշուեն պատրաստ դրամ (75 ԱՐՐ. 93)։ Այդ կէտին մէջ ալ, պէտք է դիտել տանք, որ արծաթսիրութեան և չահասիրութեան մեղադրանքը կ'արդարանար, եթէ Ղուկաս հաւաքածները ապարդիւն պահէր, կամ թէ անոնցմով յղփանար և կիրքերու կամ հաճոյքներու ծառայեցնէր։ Արդ այսպիսի ակնարկ մը չենք գտներ նոյնիսկ ամբաստանողներու մօտ. այլ ընդհակառակն կը տեսնենք որ բոլոր գումարները օգտակար շինութեանց և նորոգութեանց գործածուած են (§ 2205), և գլխաւորապէս Մայրաթոռին պաշտպանութեան և չքեղու-*

թեան (§ 2207)։ Կ'երեւի թէ Ղուկասի դէմ ատգոհութեան պատճառ՝ աթոռին հասոյթները անաչխատ վայելելու զակատուած միաբանները յուսախաբ թողուլն եղած է։ Մենք կը պնդենք եւս թէ կարողագոյն միաբանները նուիրակութեան յղելը՝ իմաստուն կարգադրութիւն եղած է, որ գացած տեղերնին ժողովուրդին հովուութեան ալ հոգ տանին, և ոչ թէ ապիկար հարկահաններ ըլլան, և ոչ ալ ժողովուրդէն մարմնաւորը կթեն՝ առանց հոգեւորը ընձեռելու։ Այդ կարգին յիշենք թէ իրօք արդիւնաւոր նուիրակներ եղան, Սահակ Փառակեցին և Մինաս եպիսկոպոսները ի Կ-Պոլիս, Գրիգոր Օշականցին ի Կարին, Պետրոս Փերթումեան կամ Աղամալեան յՕւդոկիա, Եփրեմ Ձորագեղցին ի Հնդկաստան և Ռուսաստան (ՄՄՐ. 9), Դանիէլ Սուրմառեցին ի Ռումէլի, (§ 2189), Գալուստ Ջուղայեցին ի Նիկոմիդիա (ՄՄՐ. 19) և ուրիշներ ալ ուրիշ շրջանակներու մէջ։ Իսկ պատրաստ թողած գումարին՝ ապագային մէջ [illegible] [illegible] ծառայած ըլլալը (ՄՄՐ. 13), չկրնար Ղուկասի վրայ մեղադրանք բերել, որ չէր կրնար նախատեսել՝ իր մահուանէ ետքը յաջորդութեան պատճառով յուզուած անտեղի և մնասաբեր վէճերը։ Ընդհանրապէս Ղուկասի վրայ կը փայլի անտեսագէտ անձի մը նկարագիրը, գանձելու մէջ յաջողակ և ծախսելու մէջ խոհական. որ եթէ մէկ կողմէն իր բնական ձգտումներուն և ձիրքերուն հետեւանքն էր, միւս կողմէն ժամանակին անհրաժեշտ պահանջն ալ էր. զի եթէ այն աղետալի արկածներուն և տագնապներուն մէջ, զորս պատմեցինք, անտնտեսագէտ, և լոկ գիրի ու գիրքի հետամուտ կաթողիկոս մը գտնուէր, գուցէ Մայրտաճարն ալ կործանած, Մայրաթոռն ալ քանդուած և հայրապետութիւնն ալ վտանգուած ըլլար։

**2215**. Ղուկաս կը մեղադրուի նաեւ, որ իր օրով դադարեցան Սիմէոնի հիմնած տպարանը, և թուղթի գործարանը (ՄՄՐ. 11)։ Բայց մեղադրանքը կ'արդարանար եթէ Ղուկաս ինքն վնասած կամ ինքն քանդած ըլլար այդ հաստատութիւնները։ Ընդհակառակն

ՈՒՍՈՒՄՆԱՏԵԱՑ ՄԸ ՉԷՐ

կը տեսնենք որ մինչեւ 1791, Ղուկասի խընամքով զանազան հրատարակութիւններ լոյս տեսած են Էջմիածինի տպարանէն (ԴԻԻ. Տ. ԴԵ), և միայն նոյն թուականէ ետքը դադրած են, երբոր Խոյի և Երեւանի բռնապետներուն միջեւ տեղի ունեցած պատերազմներուն պատճառով, Էջմիածին իրեւ բերդ գործածուեցաւ, և զանազան մասեր սրբուեցան և քանդուեցան (§ 2199)։ Իսկ հետզհետէ տեղի ունեցած պայքարներ անհնար դարձուցին վերականգնել և արդիւնաւորել նոյն հաստատութիւնները, որոնք տեղական միջոցներով չէին կրնար կենդանանալ, և պէտք էր ամենայն ինչ դուրսէն հոգալ, իսկ դուրսի յարաբերութիւններ խափանուած էին իսպառ։ Բայց ինչ որ Էջմիածինի մէջ անհնար էր ընել, ուրիշ տեղ կազմակերպելու ջանքը չպակսեցաւ Ղուկասի վրայ, և իր քաջալերութիւնները իրենց արդիւնքն ունեցան Արղութեանի տպարանական հաստատութիւններով Նոր Նախիջեւանի և Աստրախանի մէջ, և Շիրազեցիին կամ Շմաւոնեանին տպարանով Մադրասի մէջ։ Մինչեւ իսկ Ղուկասի կը վերագրուի Շմաւոնեան Յարութիւն քահանան յորդորած ըլլալը՝ Մադրասի մէջ հրատարակելու Ազդարար ամսագիրը (ԴԻԻ. Դ. ԾՂ), որ 1794 յուլիսին սկսած և Հայ պարբերականներու անդրանիկն է։ Աւելի չենք ուզեր երկարել այդ կէտերու վրայ, զի նպատակնիս Ղուկասի ջատագովականը գրել չէ, այլ իբրեւ անաչառ պատմագիր, եղելութիւնները իրենց իսկական նկարագիրին ներքեւ ներկայել։ Այստեղ յիշատակենք մասնաւոր դէպք մըն ալ, որ իր պարզութեան և առերեւոյթ փոքրկութեան մէջ ալ՝ լայնախոհ միտքի նշան կը դառնայ։ Երբոր Մահմատ թագաւորեց, և եղբայրը Ալիղուլի Երեւանի մէջ բռնացաւ (§ 2202), այս վերջինը ուզեց իր հաճոյքին համար Հայ աղջիկներ ժողվել տալ Երեւանի իշխանութեան սահմաններէն, բացառութիւն ընելով արդէն ամուսնացեալներուն։ Հազիւ թէ այդ բանը լսուեցաւ, Ղուկաս հրաման ըրաւ որ Երեւանի և շրջակայից մէջ գտնուող, և [illegible] վեր եղող աղջիկները իսկոյն ամուսնացնեն, չնայելով որ կը գտնուէին [illegible] [illegible]

ցեց, յորս արգելեալ էին հարսանիք ըստ եկեղեցական կանոնաց (ՄՄՐ. 9)։ *Ժամանակագրական հաշուով եղելութիւնը պէտք է դնել 1797 Մեծպահքին, որ տարին Բուն բարեկենդանը կ'իյնար փետրուար 15'ին։*

**ԽՈՐՀՐԴԱԿԱՆԱՑ ԺՈՂՈՎ**

**2216**։ *Երբոր Ղուկասի ընտրութիւնը ընդունելու խնդիրը Կ-Պոլսոյ մէջ կը յուզուէր, Տաճկահայոց կողմէ Մայր աթոռին առաջարկուած պայմաններէն մէկն էր, աթոռին մատակարարութեան համար* կոչոցանել ձեռնհրապականն *(§ 2151)։ Իսկ Մայրաթոռոյ միաբանութիւնը գիտել տուած էր, թէ նոր օրէնք չէր կրնար դրուիլ առանց կաթողիկոսի, և թէ այդ կէտն ալ կրնար կարգադրուիլ Ղուկասի կաթողիկոսութիւնը ընդունուելէն և հաստատուելէն ետքը (§ 2153)։ Այսչափն ալ լեռլեայն յանձնառութիւն մըն էր առաջարկուած պայմանը ժամանակին գործադրելու։ Ղուկասի մասին գտնուած յիշատակարաններ և իւր պաշտօնագիրներ՝ յայտնի չեն խօսիր, թէ ինչ որոշում տրուեցաւ այդ մասին Ղուկասի կաթողիկոսութիւնը ընդունուելէն և հաստատուելէն ետքը, որ տեղի ունեցաւ 1781'ին, Զաքարիայի պատրիարքութենէ դադարած միջոցին (§ 2158)։ Բայց գործին մոռցուած և բարձիթողի եղած չըլլալուն վկայութիւնը կ'ունենանք Ներսէս Ե Աշտարակեցի կաթողիկոսին գրուածներուն մէջ, որ կը հաւաստէ թէ 1783'ին,* կաթողիկոսն և ամենայն արքեպիսկոպոսք Էջմիածնի, պատրիարքն և ամենայն հոգևորականք և ժողովրդականք Կոստանդնուպոլսոյ, հաստատեալ առաջարկեցին միաբանութեամբ, զի անդամք միաբանութեան Էջմիածնի, արքեպիսկոպոսք կամ եպիսկոպոսք, չիցեն պակաս քան զնոյն *(ՄՄՐ. 10)։ Աղանեան Գիւտ քահանան, Դիւան հաւաքածոյին հրատարակիչը, թերահաւատութեամբ կը վերաբերուի այդ վկայութեան վրայ, իւր հաւաքածոյին մէջ այդ մասին* ոչինչ յիշատակութիւն *չգտնելով (ԴԻՒ. Բ. 201), սակայն մենք այլապէս պիտի վերաբերուինք։ Եթէ կանոնական ծրագիրով և գրաւոր հրահանգով կազմուած սինհոդական մարմինի մը վրայ խօսուէր, կրնար իրաւունք տրուիլ Աղանեանի։ Բայց խնդիրը պարզապէս կաթողիկոսին միահեծան և ալիկամի մատակարարութիւնը դադարեցնելու և խորհրդակցութեամբ գործելու վրայ ամփոփուած ատեն, շատ լաւ կ'արդարանայ Աշտարակեցիին վկայութիւնը։ Այդ պայմանը կանուխէն Զաքարիայի կողմէն առաջարկուած էր, բայց Ղուկասի ընդունելութիւնը կատարուեցաւ Համատանցիին օրով, երբ այն ատեն նախկին պայմաններուն վրայ որոշակի միտք չէր դարձուած։ Բայց երբ Զաքարիա պատրիարքութեան դառնալով լրացեալ գործի մը դիմաց գտնուեցաւ, անհնար էր որ գոնէ իւր նախապէս առաջարկած պայմաններուն վրայ չպնդէր, և Ղուկաս ալ անոնց չհամաձայնէր։ Ուստի անշուշտ վեց խորհրդականներու անուանումը կատարուած է Ղուկասի կողմէ, և այս ալ յատակ կերպով կը ճշդուի 1783 թուականով և գործադրութեան ձևովը։* Զի ոչ միայն կաթողիկոսն և արքեպիսկոպոսք Էջմիածնի եղան, որ հաստատեալ առաջարկեցին, այլև պատրիարքն և հոգևորականք և ժողովրդականք Կոստանդնուպոլսոյ. *ուր յայտնապէս կը տեսնուի Զաքարիայի պնդելը և Ղուկասի համակերպիլը։ Հետևապէս պէտք է Ղուկասի օրով դնել Մայրաթոռի խորհրդակցական կառավարութեան սկիզբը, բայց դեռ* խորհրդականութեան *նախնական և գրեթէ անկերպարան ձևին մէջ, որ* Կառավարիչ ժողով *եղաւ Դանիէլ Սուրմառեցիի օրով 1808'ին, և օրինական* Սինհոդ *հաչակուեցաւ Յովհաննէս Կարբեցիի օրով 1836'ին։*

**ԱՂՈՒԱՆԻՑ ԱԹՈՌ**

**2217**. *Աղուանից կաթողիկոսական աթոռը չփոթ և անիշխանական կացութեան մէջ թողուցինք Յովհաննէս Հասան-Ջալալեանի սպանութենէն ետքը (§ 2196)։ Իսրայէլ օրինաւոր կաթողիկոս չէր ճանչցուեր, բայց Յովհաննէսի օրինաւոր յաջորդ մըն ալ չէր օծուած. Սարգիս ալ ազատած գոյքերով աստեանդ ամուր տեղեր թափառական կը շրջէր 1786'է մինչև 1792։ Վրաց թագաւորներ կ'ուզէին պաշտպան կանգնիլ Աղուանից աթոռին, բայց Հայոց աթոռին դէմ ըմբոստութիւնն ալ չէին համարձակիր պաշտպանել։ Ուստի աւելի անձնական հովանաւորութիւն մը կը կատարէին խնքնակոչներու վրայ։ Այս կերպով Իսրայէլի* ազգն անկարգու—

թեան և [illegible] [illegible] [illegible], Գէորգի արքայորդին նստեցուցած էր զնա, իբր արքեպիսկոպոս և առաջնորդ Հաղբատայ վանքին, և Ղուկաս ալ հաւանութիւն յայտնած էր 1783'ին նամակովը (ԴԻԻ. Դ. 504), թէպէտ Իսրայէլ՝ կաթողիկոս կոչումը կը պահէր։ Իսկ Սարգիս, եղբօրը յաջորդելու թեկնածու, Գանձակի Ջաւատ խանի պաշտպանութիւնը շահելով, 1792 դեկտեմբեր 8'ին Գանձասարի մէջ կաթողիկոս հռչակուեցաւ և օծուեցաւ, Իսրայէլին հակառակ։ Սարգիս Ղուկասի ալ դիմեց, 1795 հոկտեմբեր 22'ին աղերսարկու նամակով մը (ԴԻԻ. Դ. 648), բայց Ղուկաս չուզեց ճանչնալ ինքնընծայ կաթողիկոսը, և դեկտեմբեր 15'ին պատասխանեց, թէ [illegible] (ԴԻԻ. Դ. 649)։ Այսուհանդերձ երկու ինքնակոչներն ալ կը կարծէին իրենց միտքը յաջողցնել, բայց Սարգիս տեսնելով որ ոչ Ջաւատ խանէ և ոչ մելիքներէ սպասած օգնութիւնը չգտներ, իր Դանիէլ եղբօրը որդւոյն՝ Բաղդասար աբեղային հետ Տփղիս անցաւ 1796ին, Հերակլի պաշտպանութեամբ զօրանալու յուսով։ Բայց Հերակլ մեռաւ այն օրեր, և Գէորգի միջամտեց Ղուկասի մօտ, բայց ընդդիմութեան հանդիպեցաւ՝ Սարգիսի ինքնագլուխ կաթողիկոսացած ըլլալուն պատճառով։ Գէորգի այն ատեն, մէկ կողմէն խստանալու ձեւեր առաւ Էջմիածինի նուիրակները իր սահմաններուն մէջ արգելել սպառնալով (ՄՈՎ. 319), միւս կողմէն Սարգիսը խոնարհեցուց [illegible], և Ղուկաս հաւանեցաւ, որ Սարգիս [illegible] լինի առաջնորդ Հաղբատայ [illegible] իբրեւ արքեպիսկոպոս Աղուանից երկրին, և այս պայմանով ճանչցաւ Սարգիսը, որ մինչեւ Էջմիածին եկած էր. և ըստ այնմ ալ գրեց Գէորգիի 1797 օգոստոսին (ԴԻԻ. Դ. 678)։ Նոյն թղթով կը խնդրէր, որ այլեւս Էջմիածին դարձնէ Ս. Գեղարդը, որ Տփղիս ղրկուած էր ժանտամահի առթիւ, Ակնեցի Յովհաննէս վարդապետին հետ (§ 2203), և զոր Վրաց արքունիքը մօտը կը պահէր իբր պատանդ կամ գրաւական, Էջմիածինի վրայ ազդելու համար։ Գէորգի այս անգամ ալ Ս. Գեղարդը չդարձուց, և Ղուկաս ալ նորէն պնդելու և պահանջելու ատեն ալ չունեցաւ, զի չատ չուշացաւ իր մահը, որ ինչպէս գրեցինք տեղի ունեցաւ 1799 դեկտեմբեր 28'ին (§ 2204)։ Հոս կը փակենք Ղուկասի կաթողիկոսութեան շրջանը, որ իրաւամբ [illegible] կոչմամբ կը պատուուի կաթողիկոսաց շարքին մէջ (ԴԻԻ. Դ. 684)։

**ԷՋՄԻԱԾԻՆԻ ԸՆՏՐԵԼԻՆԵՐ**

2218. Մայրաթոռոյ միաբանութիւնը չտապեց յաջորդի ընտրութեամբ զբաղիլ, և նոյն իսկ Ղուկասի թաղման օրը, 1799 դեկտեմբեր 29'ին, ժողովի գումարուեցաւ, որ զանազան կողմերէ յաջորդութեան ցուցուածներէն յարմարագոյնը նշանակէ։ Մէկէ աւելի էին աչքի ինկողները, ըլլան միաբանութեան գնահատումով, ըլլան իրենց հետամուտ թեկնածութեամբ։ Նախաւառաջ Մինաս եպիսկոպոսի խօսքը կ'ըլլար, բայց պարզապէս քաղաքավարական ձեւակերպութեամբ մը, իբր զի տեղապահ կը գտնուէր. բայց կաթողիկոս ըլլալն ալ անհնար էր, զի աչքի տեսութիւնը կորուսած էր (ՄՍՐ. 14)։ Իբր ամէնէն աւելի արժանաւոր և յարմարաւոր կը ներկայանար Դանիէլ Սուրմառեցին, որ վերջերը Կ-Պոլսոյ պատրիարք ընտրուած էր (§ 2189), և ամէնուն կողմէ յարգանք կը վայելէր։ Բայց անոր համար ալ կը կասկածէին թէ Կ-Պոլսոյ մեծամեծներ արգելք գնեն, չուզելով նորէն պատրիարքական տագնապի մատնուիլ, նոր պատրիարքցու գտնելու դժուարութեամբ (63 ԿՈՆ. 744)։ Այդ մտածումով իբրեւ աւելի յարմարաւոր Եփրեմ Ձորագեղցիին անունը կը տրուէր, որ երբեմն Հնդկաստանի մէջ արդիւնաւոր նուիրակութիւն կատարած, և վերջերս 1799 փետրուար 12'ին Ռուսաստանի նուիրակութեան ղրկուած էր (ԴԻԻ. Թ. 265), և կարող էր կաթողիկոսական աթոռին մատակարարութիւնը վարել (63 ԿՈՆ. 744)։ Եփրեմի համար ալ դիտողութիւն ընող եղաւ, թէ [illegible] (ՄՍՐ. 15), որով կ'իմանային Ռուսաստանի մէջ տիրապետող Արդութեանը, որ հարկաւ արգելք պիտի հանէր, իրեն ուզելով պահել աթոռը, և թերեւս աւելի յարմար կ'ըլլար զայն առաջ անցընել։ Բայց անոր մասին

ալ դիտողութիւն կ'ընէ Մինաս եպիսկոպոս, բերեալ է մեզ զզանազան բանաւոր պատճառս (ԴԻԻ. Բ. 46)։ Իսկ այս պատճառներն էին Յովսէփի Ռուսաց մարդ (ԵՐՑ. Ա. 2), կամ Ռուսաց կառավարութեան գործիք նկատուիլը, և Ռուսաց բանակին հետ Պարսից և Օսմանցւոց դէմ պատերազմի մէջ գտնուած ըլլալը (ԴԻԻ. Դ. 687), մինչ ընտրութիւնը հաստատողներ Պարսիկ և Օսմանեան կառավարութիւններ պիտի ըլլային։ Այդ մտածմունքով ընտրելի առաջարկուեցաւ Կեսարիոյ առաջնորդ Ստեփանոս Սեբաստացի եպիսկոպոսը, բայց անոր ալ հեռաւոր և Մայրաթոռէ դուրս ըլլալը դիտողութեան տեղի տուաւ։ Իբր ոչ մի բանով դաշնաւոր հետ ձեռնադրեալ եպիսկոպոսացն յիշուեցաւ նաեւ Դաւիթ Էնէգէթցի եպիսկոպոսը, Ղորղանեան ազգատոհմէն, որ աթոռակալ ալ էր (ՄՍՐ. 15), այսինքն է աթոռին տնտեսական կամ ելեւմտական վարիչը (ՄՈՎ. 325)։ Դաւիթի անունին դէմ ալ դիտողութիւն ընողներ եղան, որոց դէմ սկսաւ գրգռուիլ Դաւիթ՝ որ ներկայ էր, և այդ առաջին ժողովը ցրուեցաւ աղմկաւ և խռովութեամբ (ՄՍՐ. 15), շատ մը անուններ տալով, բայց որոշման չկրնալով յանգիլ։

**ԴԱՆԻԷԼ ԵՒ ԵՓՐԵՄ**

2219. Միւս օրը դեկտեմբեր 30, և ոչ դեկտեմբեր 28 (ՄՍՐ. 15), նորէն կը գումարուին ի դահճին, և վերջապէս համաձայնութիւն կը գոյացնեն Դանիէլի և Եփրեմի անուններուն վրայ, առաջնութիւնը Դանիէլի տալով, և Եփրեմն ալ աւելցնելով՝ Կ-Պոլսոյ մեծամեծներուն Դանիէլէ բաժնուիլ չուզելը նեթադրելով։ Ըստ այսմ պաշտօնական գիրը կը պատրաստեն միաբանութեան անունով, որուն մէջ երկու ընտրելիներու անունները ոսկեզօծ ծաղկօք և ընտրելի նկարէօք գրուած էին։ Գիրը կը ստորագրեն նաեւ Սրբոյն Թադէի Մեծին և Լուսաւորչին։ Երեւանի իշխող Մահմատ խանէն ալ յատուկ գիրեր կ'առնեն առ սրբազան Դանիէլ, և առ պատրիարքն Օսմանցւոց (63 ԿՌՆ. 744)։ Միաբանութեան պաշտօնագիրը կը կազմուի 1800 յունուար 2 թուականով, և պէտք եղած պատրաստութիւններով կ'անցրնեն Ծնունդին տօնական օրերը։ Գիրերը Կ-Պոլիս տանելու պատգամաւորի ընտրութիւնը մտածած ատենին, Դաւիթ ամէն միջոցներով կ'աշխատի որ ինքն ըլլայ պատգամաւորը, և կը յաջողի ալ միջնորդութեամբ իւր Բարսեղ եղբօր, և ազդեցութեամբ անոր աներոջ մելիք Աբրահամ Աղամալեանի, և Էջմիածինէ կը մեկնի 1800 յունուար 16'ին (ԴԻԻ. Դ. 687), երկուշաբթի օր։ Միաբանութիւնը կը կարծէր դժուարին կացութեան մէջէն ելած, և մանաւանդ Յովսէփ Արղութեանի անունէն ծագելիք վտանգէն ազատուած ըլլալ, համոզուած ըլլալով թէ անոր պատճառաւ Հայ ժողովուրդք տէրող զերծութեանց վրէժխնդրութեան ընդ զէտէ լինէր (ՄՈՎ. 324)։ Բայց ուրախութիւննին շատ կարճ եղաւ։ Աղանեան իւր ամփոփումին մէջ կը յիշէ, թէ Դաւիթ՝ Դանիէլի և Եփրեմի համար պաշտօնական գիրէն զատ (ԴԻԻ. Ե. 3), վկայական գիր մըն ալ ունէր ծածուկ, որով միաբանութիւնը յառաջագոյն ընտրեալ կը ցուցնէր Դաւիթը (ԴԻԻ. Է. ժբ)։ Բայց ոչ միայն վաւերական աղբիւրը ցուցուած չէ, այլեւ միաբանութեան համար նախատական պիտի սեպուէր այսպիսի խարդախ ընթացք մը։ Առաւաւելն կրնար քանի մը կուսակիցներու կողմէ մասնաւոր գրութիւն մը եղած ըլլալ։ Յետ մեկնելոյ նորա յաղթողին պատգամաւորին և պաշտօնագիրներուն (ԴԻԻ. Թ. 310), որ է ըսել յունուար 27'ին (ՄՍՐ. 17), ստիպողական գիրեր և լուրեր կը հասնէին Տփղիսէ, երբ Դաւիթ հազիւ թէ Կարին հասած կ'ըլլար (63 ԿՌՆ. 745)։ Նա կը փութար շուտով հասնիլ Կ-Պոլիս, և Կ-Պոլսեցւոց կատարելիք ընտրութեան մասնակցիլ՝ երկճղի նպատակով, կամ ընտրութիւնը իւր վրայ դարձնել տալ, և կամ եթէ Դանիէլի վրայ կայանար, անոր պատրիարքութիւնը ձեռք ձգել։

**ՅՈՎՍԷՓԻ ՀԱՄԱՐ**

2220. Էջմիածինէ Տփղիս շուտով հասած էր Ղուկասի մահուան գոյժը, և տեղւոյն հայարնակութիւնն ալ և պետական շրջանակներն ալ սկսած էին յաջորդի անձնաւորութեամբ զբաղիլ, և համամտութիւն յայտնուած էր Յովսէփ Արղութեանի անունին վրայ։ Յովսէփ ծանօթ էր իբրեւ կարողագոյն անձնաւորութիւն մը, որ 1773'էն սկսելով (§ 2192), 27 տարիէ իվեր Ռուսաստանի առաջնորդ էր,

ազդեցիկ դիրք կազմած էր, և Ռուսիոյ արքունեաց հետ մտերմական յարաբերութիւններ հաստատած էր։ Ոչ միայն կրնար Մայր աթոռի մէջ արդիւնաւոր պաշտօնավարութիւն ունենալ, այլեւ յարմարագոյն և գուցէ միակ միջնորդն էր, որ կրնար Ռուսական պաշտպանութեամբ Հայաստանի Հայութիւնը իւր տագնապալից վիճակէն ազատել։ Այդ գաղափարը պարզապէս ժողովուրդին կամ բարձր շրջանակներու մէջ կազմուած միտք չէր, այլ համարձակ կրնանք ըսել, թէ Յովսէփ ինքն էր այդ նպատակը կազմողն ու մշակողը։ Ղուկասի կենդանութեան ատենէն՝ Էջմիածնի կաթողիկոսական վէքիլը տիտղոսը գործածել սկսած էր (ՄՈՎ. 324), կաթողիկոսական աթոռին յաջորդելու միտքը բացարձակ յայտարարած էր, իւր ապագայ գործունէութեան արդիւնքներն ալ մատնանշելով, և նոյն իսկ Կ-Պոլսոյ մեծամեծներուն՝ այդ միտքը [illegible] յայտնել էր մի քանի անգամ (ՋԱՄ. Բ. 142)։ Այնպէս որ Ղուկասի ականջն ալ հասած էր այդ ամէնը, և քանիցս կրկնած էր այն նշանաւոր խօսքը. [illegible] (ՄՈՎ. 324)։ Հետեւաբար Յովսէփի յաջորդութեան գաղափարը՝ ծանօթ մի բան էր, և նոյն կէտը որ միաբանութիւնը զգուշաւորութեան կը յորդորէր, ուրիշները գործունէութեան կը մղէր։ Տփղիսի մէջ եղող Յովսէփի ազգականներ և բարեկամներ անմիջապէս գործի սկսան, և ձեռք առին Վրաց Գէորգի թագաւորն ալ (ՄՍՐ. 16), որ իրեն ալ նպաստաւոր արդիւնքներ կրնար ակնկալել Յովսէփի դիրքէն և յարաբերութիւններէն։ Իրենց կողմը չահեցան նաեւ Տփղիսի մէջ Ռուսական զօրավար Լազարեվը (63 ԿՈՆ. 745), և դեսպան Պետր Իւանիչ կամ Պետրոս Յովհաննէսեան Կաւալիցկին (ԴԻԻ. Թ. 295)։ Գէորգի թագաւոր իրեն մօտ կանչեց Յովհաննէս Ակնեցի եպիսկոպոսը, Գեղարդին պահապանը, որ Գեղարդակիր և Կենդանի-Նահատակ մականուններով ալ յիշուած է, և որ Տփղիսի մէջ իբրեւ Մայրաթոռոյ ներկայացուցիչ կը նկատուէր։ Բացարձակապէս հրամայեց, [illegible] բա-

պառնալիքն ալ աւելցնելով վրան, [illegible] (ՄՍՐ. 16)։ Գէորգի այս նպատակով գիր մըն ալ ուղղեց միաբանութեան, գիր մըն ալ իւր որդւոյն Դաւիթի անունով (ԴԻԻ. Թ. 297)։ Յովհաննէս եպիսկոպոսն ալ գրեց, Տփղիսի Հայ մեծամեծներն ալ նոյն միտքով զատ գիր մը ուղղեցին Մայրաթոռոյ միաբանութեան 1800 յունուար 11 թուականով (ԴԻԻ. Թ. 293), և Յովսէփ Միրիչքարբաշի իշխանազունը, և Տփղիսի աւագերէցներէն Ստեփան (ԴԻԻ. Թ. 294) կամ Առաքել (ԴԻԻ. Թ. 310) քահանան՝ իբր պատգամաւոր ճանապայ հանեցին, գիրերը Էջմիածին տանելու և միաբանութիւնը համոզելու։ Կ'երեւի թէ եղած ընտրութեան (§ 2219) լուրը չէր հասած Տփղիս, վասնզի այդ մասին բնաւ ակնարկ չենք տեսներ վերոյիշեալ գրութեանց մէջ։

**2221.** Պատգամաւորները Էջմիածին հասան յունուար 27'ին, և վերիվայր եղաւ միաբանութեան մտադրութիւնը։ Տփղիսի Հայութեան թախանձանքը, Վրաց թագաւորին կամքը, Ռուսական ներկայացուցիչին առաջարկը, Գեղարդը կորսնցնելու սպառնալիքը, իրարու վրայ բարդուելով, միաբանութիւնը դիջողութեան ստիպեցին, որչափ ալ ակամայ և բռնադատեալ ըլլար իրենց հաւանութիւնը։

ԴԱՆԻԷԼ ԵՒ ՅՈՎՍԷՓ

Հարկաւ ժողով մըն ալ տեղի ունեցաւ, և որոշուեցաւ որ ընտրելիներու անուններուն մէջ Յովսէփի անունն ալ գրուի իբր երկրորդ, առանց բոլորովին ջնջելու Եփրեմի անունը, և Կ-Պոլսոյ մեծամեծաց հաղորդուի նոր թուղթով մը, անոնց թողլով ուզածնին ընտրել, և յայտարարելով, որ [illegible] (ԴԻԻ. Թ. 297)։ Միաբանութիւնը այս կերպով կը մտածէր զժուարութեան մէջէն ելած ըլլալ, գործը բոլորովին Տաճկահայոց վրայ թողլով. գուցէ ալ կը յուսար թէ Տաճկահայք չեն հաւանիր կամ չեն համարձակիր Ռուսի մօտ եղողը կաթողիկոսու-

թեան բարձրացնել: Մայրաթոռոյ միաբանութիւնը ստիպողական պարագային առջեւ' երկարօրէն վարանած չէ, զի յունուար 27'ին հասած էին Տփղիսի պատգամաւորները, և 28'ին իրենց որոշումը կը գրէին Դաւիթ եպիսկոպոսին: Գիրին մէջ կը պատմեն թէ ստիպումներ ստացած են Տփղիսէ, և որչափ ալ առաջ վասն կասկածելի պատճառաց ոմանց չէին համարձակած Յովսէփը իբր ընտրելի ցուցնել, բայց այժմ կ'ըսեն, դարձեալ [illegible] այն ալ ներկայել նոր գրութեամբ մը, և անոր մէջ ընդ յաջորդել դարձեալ Դանիէլ արքեպիսկոպոսին' հակառակ Յովսէփ արքեպիսկոպոսն դասելով: Սակայն առջի գրութիւններն չեղեալ չեն համարիր, այլ կը յանձնարարեն, որ թէ առաջին հանեալ և թէ երկրորդ հանեալ է միայն հաստատեալ օրհնեալ ազգին մերոյ: Այս երկրորդ հանրագիրին չէին կրցած ամէնքը ստորագրել' վասն սղութեան ժամանակի (Դիւ. Թ. 306), միանգամայն այն է վերայ հասարակ թղթոյ և անպաճոյճ շարադրութեամբ գրուած էր, որ նշան էր անհաճութեան մտաց բողոքողաց' ընդդէմ Յովսէփ արհւոյն (63 ԿԹՆ. 746): Այդ գիրերը ստիպաւ Կարս յղուեցան, որ անկէ ալ թաթարաւ հասցնեն Դաւիթին' ուրեւիցէ (Դիւ. Թ. 306): Միւս օր, յունուար 29'ին, միաբանութիւնը փութաց իւր որոշումը հաղորդել թէ արքայազուն Դաւիթ իշխանին (Դիւ. Թ. 299), և թէ Ռուսիոյ դեսպան Կուալիցկիին (Դիւ. Թ. 295), երկարօրէն բացատրելով իրենց առաջին որոշման պատճառները, և չմոռնալով ալ կրկնել Ս. Գեղարդը դարձնելու խնդրանքը, քանի որ իրենք համակերպելով հպատակած էին իրենց եղած պահանջումին: Հարկ կը սեպեն յատուկ և բացատրական նամակով մը եղելութիւնները և փոփոխութիւնները Եփրեմի ալ հաղորդել (Դիւ. Դ. 685): Այս նամակը գրուած է 1800 փետրուարին (Դիւ. Դ. 689), հարկաւ առջի օրերը, զի պէտք չէր յապաղել պարտուպատշաճ բացատրութիւնը: Բայց Եփրեմ, բոլորովին հեռու կաթողիկոսանալու փափաքէն կամ յաւակնութենէն, բնաւ տժգոհութիւն չզգաց եղած փոփոխութեան վրայ, արդէն ինքը կանխած էր կաթողիկոսութիւնը Յովսէփի առաջարկել (Դիւ. Թ. 303), և իւր ընթացքն ալ նոյնը հաստատեց, ինչպէս պիտի տեսնուի պատմութեան ընթացքին մէջ, և Եփրեմի կատարած ջանքերով:

2222. Պէտք էր որ այդ անցուդարձերուն վրայ Յովսէփի ալ բան մը գրուէր միաբանութեան կողմէն, և իրօք ալ կը գտնենք այս նպատակով անոր ուղղուած երկար նամակ մը (Դիւ. Թ. 307): Միայն թէ գրչագիրի կամ տպագիրի սխալմունք մը սպրդած է նամակին ներքեւ գրուած 1800 յունուար 20 թուականին մէջ (Դիւ. Թ. 311), որովհետեւ նոյն նամակին մէջ յիշուած են, առաջին ընտրութեան և վերջին փոփոխութեան պարագաները, որք յունուար 27'էն ետքը տեղի ունեցան: Հետեւապէս Յովսէփի ուղղուած նամակը' հազիւ յունուար 30'ին գրուած կրնայ ըլլալ: Միւս նամակներուն մէջ պատմուած մանրամասնութիւններէն զատ' նկատողութեան արժանի են Յովսէփի անձին վրայ նկատուած արգելքին մասին ընդարձակ բացատրութիւնները, այնպէս որ աւելի Յովսէփը ընտրութենէն հրաժարելու, քան թէ կաթողիկոսութիւնը ընդունելու կը յորդորեն, և ուղիղ մտօք և ստուգութեամբ իրենց տեսութիւնները կը պարզեն: Կը յիշեն թէ ինչպէս ինքն Յովսէփ Պօտէմկինի բանակին հետ Օսմանեանց դէմ գտնուեցաւ' Բանտէր, Իսմայիլ, Եաշ և Միչով, թէ նոյնպէս Զաբովի բանակին հետ Պարսից դէմ եկաւ Դարբանդ, Շամախի և Գեանջա. թէ ինչպէս ինքն Յովսէփ ալ այնատեն չհամարձակեցաւ Էջմիածին գալ, և թէ երկու անգամ Ղուկասէ հրաւիրուելով' չախորժեցաւ ճաշակել զդառնութիւն խստութեան այլազգական իշխանութեանց: Ասոր վրայ դիտել կու տան, թէ ազգն մեր ընդ մեծի մասին է այժմ ընդ ծանրալուծ տէրութեամբ Օսմանցւոց, և փոքրագոյն մասն Հայաստան աշխարհի ընդ խիստ իշխանութեամբ Պարսից (Դիւ. Թ. 309): Ուստի կ'ըսեն, եթէ չունիս կասկած վասնզի առ միաբանելն անձն քո, և առ սուրբ տանս, և առ ազգ մեր, հրամայեսցես եկեսցես ի սուրբ աթոռս ի կաթողիկոսութեան, բայց կ'եզրակացնեն, որ եթէ երկիցես ի պատճառաց յիշեալցելոց, թէ վասն լինելոյ չէզոքութեան անձին, և արթոյ աթոռոյս, և ազգի մերում, և չկամիցես գալ, առ այն ոչ կարեմք յետ լինել մեղադիր (Դիւ.

ՅՈՎՍԷՓԻ ՃԻԳԵՐ

Թ. 311)։ Բայց Յովսէփ հեռու էր այս տեսակ կասկածներէ և զգուշութիւններէ։ Նա տակաւին միաբանութեան գիրը չառած, և թերևս ալ բոլոր անցուդարձերուն կատարելապէս չտեղեկացած, փութացած էր կանխել և ամէն միջոցները գործածել, որ կանուխէն երազած և հեռուէհեռու նախապատրաստած նպատակը իրագործուի, և առիթը ձեռքէ չփախցուի։ Անշուշտ Ռուսական արքունիքին հետ ալ՝ պէտք եղած միջնորդութիւնները ձեռք առած էր։ Արդէն փետրուար 1'ին, միաբանութեան նամակին հասնելէն առաջ, յատուկ գրութեամբ կը դիմէր ամիրայից, իշխանաց և իշխանազանց և քաղաքի Հայկազեան ժողովրդականաց Կ-Պոլսոյ (Դիւ. Թ. 301), և անոնց հաւանութիւնը կը խնդրէր իրեն կաթողիկոսութեան համար։ Այդ գրութեամբ կը պատմէ, թէ Վրաց Հերակլի թագաւորը՝ Գէորգի, որ 1797'ին հօրը յաջորդեց (§ 2203), Ղուկասի ծերութեան և տկարութեան պատճառով, զինքն հրաւիրած էր ձօնէլ ի Մերձակայ ամենայն, որպէսզի կարենայ ի դերևանց ժամու բառնալ զլուծ հովուութեան Մայրաթոռոյ։ Բայց ինքն այն առէն Զաքարիա պատրիարքին գրեր է, թէ չուզեր ի Բագրատունեաց և ի Կամսարեանց կոչուիլ, և ոչ ալ բանաբարէն սրբազան աստիճանին երևալ (Դիւ. Թ. 302)։ Բայց որովհետև այժմ անթուր պարագայ է, հարկադրեցեալ ի նոցանէ ձայնից, կը դիմէ բնակչաց մեծի մայրաքաղաքիդ Կոստանդնուպոլսոյ և Դանիէլ պատրիարքի, որ եթէ կամօք այս իցէ ի Տեառնէ, և եթէ լիցի յաւանութեամբ և համակամ համաձայնութեամբ ամենայն ազգիս մերոյ, ինքն կր հնազանդի նոյնից քաղաքութեան, և կր փութայ էջմիածին երթալ (Դիւ. Թ. 304։) Անկէ աւելի յայտնի կերպով քուէ մուրալու ապաշխանք չէր կրնար ըլլալ։ Աղանեանի Դիւանին մէջ նոյն նամակը կրկին անգամ հրատարակուած կը գտնենք (Դիւ. Թ. 311), որ կը ցուցնէ թէ Յովսէփ իւր նամակը կրկին պատճէններով և տարբեր միջոցներով յղած է, որ անկորուստ հասնի և նպատակը ապահովուի։ Նոյն միաքով գրած է եւ էջմիածին՝ անզապահ Մինաս եպիսկոպոսին (Դիւ. Թ. 315), Աստրախան՝ նուիրակ Եփրեմ եպիսկոպոսին (Դիւ. Թ. 319), Տփղիս՝ Գեղարդակիր Յովհաննէս եպիսկոպոսին (Դիւ. Թ. 322), և նոյնիսկ յատկապէս Դանիէլ պատրիարքին (Դիւ. Թ. 327), ամէնուն ալ իրեն ընտրութիւնը յանձնարարելով։

**2223.** Կոստանդնուպոլսոյ մէջ Ղուկասի մահուան առաջին գոյժը առնուեցաւ 1800 փետրուար 7'ին։ Դանիէլ պատրիարք իւր աշակերտ Ներսէս վարդապետը, որ է Աշտարակեցի ապագայ կաթողիկոսը, ճանպայ հանած էր էջմիածին՝ իւր նուիրակութեան հաշիւն ու արդիւնքը և ընծաները տանելու։ Ներսէս Կարին հասած էր Ղուկասի մահուընէ 7 օր առաջ, այսինքն 1800 յունուար 4'ին, ուր արդէն գոյժը լսուած էր, ուստի յատուկ սուրհանդակ կը հանէ պատրիարքը տեղեակ ընելու։ Այսպէս կը գրէ ժամանակակից մը Կոստանդնուպոլսոյ մէջ, տեղական լուրերը և օրերը ճշդելով, մինչ այլուր կը տեսնենք թէ Ներսէս Ղուկասի մեռնելէն չորս օր առաջ էջմիածին հասած ըլլայ (Դիւ. Ե. 9)։ Թերևս Կարինէ ղրկուած սուրհանդակը Ղուկասի վտանգաւոր վիճակին համար եղած էր, և թերևս ալ անստուգութեան պատճառով Դանիէլ անմիջապէս չէ հաւատացած՝ վերջնական և պաշտօնական լուրին սպասելով։ Միայն փետրուար 17'ին կը հաղորդէ Ջուղայեցի Գալուստ եպիսկոպոսին, որ Նիկոմիդիա կը գտնուէր նուիրակութեամբ, և Գալուստ փետրուար 22'ին Կ-Պոլիս կը հասնի, որ յաջորդին մասին խորհրդակցին (ՊՏՄ.)։ Իսկ լուրը բերնէբերան ժողովուրդին մէջ տարածուած էր, և թէպէտ պաշտօնական պատգամաւոր չէր հասած, բայց մասնաւոր նամակներ եկած էին Մայրաթոռէն, որոնք ընտրական գործողութիւնները կ'իմացնէին, և Դանիէլի կաթողիկոսանալը կը թելադրէին։ Այդ պարագայից վրայ կը հասնի պատգամաւոր Դաւիթ եպիսկոպոս, որ ձմեռուան պատճառով աստևանդ դադարած էր, և պատրիարքարան կը մտնէ մարտ 18'ին, Մեծ պահոց Դատաւորի կիրակին, կէսօրին մօտ, երբ Մայրեկեղեցւոյ երեք եկեղեցիներու մէջ, Դանիէլ պատրիարք, Գալուստ նուիրակ, և Յակոբ Երուսաղէմի փոխանորդ՝ եօթնական քահանայ կը ձեռնադրէին։ Նոյն օր կը սկսին Ղուկասի իբր հանգուցեալ կա-

ՏԱՃԿԱԿԱՀԱՅՈՑ ՄԻՏՔԸ

*թողիկոս յիշատակել: Դաւիթի ներկայու-թեամբ և բերած գիրերով՝ կաթողիկոսա-կան ընտրութիւնը օրուան խնդիր դարձաւ մեծամեծներուն մէջ, մանաւանդ որ Ղու-կասի ընտրութեան միջադէպին վրայ (§ 2151), և Յովսէփի խնդիրէն ազատելու հա-մար (§ 2221), այս անգամ միաբանութիւնը՝ բոլորովին Կ-Պոլսեցոց կամքին էր թողած ընտրութիւնը: Դաւիթէ հասնելէն [illegible] օր ետքը, այսինքն է մարտ 28'ին, ամիրա-ներու ժողով կը գումարուէր Եէնիխանի մէջ պատրիարքի գլխաւորութեամբ (ՊՏՄ.), զանազան կարծիքները ամփոփելու համար: Դաւիթ և Գալուստ հաւատարապէս Դանիէլի ընտրութիւնը կը պնդէին, իբրև միաբա-նութեան փափաք ու կամք, և միաքերը Յովսէփէ կը հեռացնէին. բայց երկուքն ալ թաքուն միտք ունէին՝ իրարմէ անկախա-բար, որ Դանիէլի տեղ պատրիարք ընտրը-ուին, կամ եթէ Կ-Պոլսեցիք Դանիէլը պա-հել ուզեն, կաթողիկոսութիւնը իրենց մնայ: Սակայն էջմիածինի եպիսկոպոսներէն մասնաւոր նամակներ եկած էին, երկուքին ալ ընտրութիւնը արգելելու նպատակով (63 ԿՈՆ. 752): Իսկ Ստեփանոս Սեբաս-տացւոյն ընտրութեան դէմ ալ՝ն կեսարա-ցիները (63 ԿՈՆ. 753): Յովսէփի և Եփրեմի մասին Կ-Պոլսեցիք նպաստաւոր չեղան, օ-տար երկիրէ, ոչ է բնաւ օտարի նպաստաւոր մարդ ընտրելով՝ կասկածի ներքեւ չիյնա-լու համար (63 ԿՈՆ. 750): Կը մնար Դա-նիէլ, բայց անոր մասին ալ մէկէ աւելի պատճառներ առջեւ կը բերէին պատրիար-քական աթոռէն չյարուցանելու համար, մինչեւ որ ինքն ալ համոզեցին ընտրե-լիութենէ հրաժարիլ (63 ԿՈՆ. 749): Եւ այսպէս բոլոր խօսուածները մէկդի թողլով, նոր անձ մը գտնելու հարկին մէջ մնացին, և պատրիարքը խնդրեցին որ յարմարագոյն մէկ մը ներկայացնէ (ՊՏՄ.): Բայց այս կերպով ժողովուրդին մէջ տարաձայնու-թիւններ կը չատնային, վէճեր և յուզ-մունքներ կը տարածուէին, մանաւանդ որ Աւագ շաբաթու տօնական օրեր ալ էին: Այնպէս որ կառավարութեան ալ մասդրու-թիւնը հրաւիրեցին, և ապրիլ 9'ին եպար-քոսական հրաման մը պատրիարքին կ'ազ-դարարէր որ չորս օրէն ընտրութիւնը վեր-ջացնեն, այսինքն մինչև ապրիլ 13: Ապրիլ 9 այն տարի Զատկի Մեծերեցն էր, և պէտք է հետեւցնել թէ նախընթաց Զատկի օրը ժողովրդական յուզումներ տեղի ունե-ցած են:*

**2224**. *Ընտրելիին վրայ վերջնական ո-րոշումը տալու համար Զատկի չորեքշաբ-թին ապրիլ 11'ին, մեծա-մեծներ ստուար թուով նա-խապատրաստական նիստ մը կազմեցին, ուր Դաւիթի և Գալուստի հարցուցին, թէ Մայրաթոռի մէջ Դանիէլէ և Յովսէփէ և Եփրեմէ զատ ուրիշ արժանաւոր մէկ մը կա՞յ արդեօք. անոնք յայտնեցին թէ չկան, և թէ Յո-վակիմ և Գրիգոր եպիսկոպոսներն ալ չատ ծեր են (ԴԻԻ. Ա. 51): Անոնք թերեւս ան-ուղղակի ինքզինքնին կը ներկայէին, բայց Կ-Պոլսեցիք անոնց մասին աննպաստ գիրեր առած և ազդուած էին: Այն ատեն իշխան-ներ որոշեցին իրենց ծանօթներէն և մեր-ձաւորներէն մէկը ընտրել: Յիշուեցաւ Պրու-սայի առաջնորդ Պօղոս Գարագօչեան եպիս-կոպոսը (ՊՏՄ.), բայց համաձայնութիւն գո-յացաւ Նիկոմիդիոյ և Արմաշու առաջնորդ Բարթողիմէոս Կապուտիկեան եպիսկոպոսի վրայ (§ 2171), որուն համար Դանիէլ վկա-յեց, թէ է այր բազմաբարոյ և գիտնական, և առաքինի վարդապետ սուրբ եկեղեցւոյ (63 ԿՈՆ. 753): Ասոր վրայ պատրիարքէ խընդ-րեցին, որ յաջորդ օրուան համար ընդհա-նուր ժողով հրաւիրէ Մայրեկեղեցին, և օրի-նական ձեւակերպութիւնները կատարուին. և միւս կողմէ ալ գիր և հրաւիրակ ղրկէ Նիկոմիդիա՝ Բարթողիմէոսը Կ-Պոլիս բերե-լու: Համաձայն այդ որոշման հինգշաբթի, ապրիլ 12, ազգային ժողովը գումարուեցաւ Մայրեկեղեցին, նախագահութեամբ Դանիէլ պատրիարքի. և ներկայութեամբ վերոյիշ-եալ Գալուստ և Դաւիթ և Յակոբ և Շուղա-ւերցի Թադէոս, և Զաքարիայի աշակերտ՝ փոխանորդ Պետրոս և Յովհաննէս եպիս-կոպոսներու, վարդապետներու և աւագե-րէցներու, բազմաթիւ իշխանաւորներու, եկեղեցպաններու, արհեստաւորաց պետե-րու, և խօջաբաշի վարպետներու, [illegible] (63 ԿՈՆ. 755): Առաջ վարագոյրը բանալով, [illegible]*

**ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ**

*Հաքքին Սաբր ու յաքնաբին կուէյին* (ՊՏՄ.), *և նորէն փակելով կարգացին Էջմիածինէ բերուած գիրերը, և Սիմէոն Փափազեանի ամբիոն բացատրեց անոնց առաջարկած անձերը ընտրելու անյարմարութիւնը, խօսեցաւ ուրիշ հնարաւոր ընտրելիներու վրայ, և յանդեցաւ Բարթողիմէոսի նկատմամբ, որուն համար գրեթէ միաձայնութիւն գոյացաւ։ Միայն Դաւիթ և Գալուստ եպիսկոպոսներ ըժգոհ մնացին, զի իրենց թաքուն նպատակներէն և ոչ մէկը յաջողեցաւ։ Իրենց հետեւողներէն Ստեփան Պասմաճի ծերունի մը, և Միքայէլ Քէմրանպաշի խոհարար մը, ձայն բարձրացուցին, որ Բէ է յաբնայ ու լէնէ ու, ու կոբէ հանդարդ նոթէլ* (ՊՏՄ.)։ *Բայց բաւական ձայնակիցներ չունեցան, և պատրիարքը սաաց վան Բոբնոչէմէս սրքեգէօկօղոսէ չՊահգանէչ, և այնպէս ժողովը արձակուեցաւ, թէպէտ եղեն ձայն հանողներ, թէ Վ՛ կարծէք Բէ կառարեցաս այդ ընդրոսբէան* (63 ԿՈՆ. 758)։ *Այսուհանդերձ տրուած որոշման համեմատ տեղեկութիւն հաղորդուեցաւ կառավարութեան, ապրիլ 13'ին, որ էր պայմանադրեալ օրը։*

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԴԻՄԱԴԻՐՆԵՐ**

2225. *Դաւիթ և Գալուստ, որ յուսախաբ մնացած էին, ձեռնարկեցին եղած որոշումը խափանել, ամբաստանելով թէ սուրբ սբսան է յէսաց ելանել երեսի, և թէ սուր ըսբսան փողալե և վէրէվայր ւրձէւ կօփն* (ՊՏՄ.)։ *Բայց տարբեր էին երկուքին բնաւորութիւնները։ Դաւիթ, արտաքինովը՝ բարյրահասկ և ճեծակն, երկայնամօրուս և բիսասէմ, իսկ ներքինովը՝ խարաքեր և դարանագործ* (ՊէՐ. 8), *կարող էր գաղտնի հնարքներ լարել. մինչ Գալուստ՝ այր պարդամիտ և անխոհեմ* (ՊէՐ. 11) *միայն ընդունակ էր գործիք դառնալ ուրիշի ձեռք։ Ապրիլ 12'ին գիշերը Դաւիթ ֆնացեալ է սէնէակ նասէրակ Գալուստ էդէօկօդոսէ, կը սկսի դայն գրգռել, թէ արժանաւորը դուն էիր, թէ օտարական մտցնել պէտք չէր Մայրաթոռ, թէ պէտք է առջեւն առնել գայթակղութեան, թէ ընտրեալն ալ արժանաւոր մէկը չէ* (63 ԿՈՆ. 759), *և այս առթիւ կը յիշուի եւս, թէ նա էբրև ըսյխարհականս ծխախոտը և նարգիլեասաչասանայ* (ՊէՐ. 11)։ *Դաւիթ այնչափ կը խօսի, որ դարբեալ ալլորմէյէ Գալուստ արհայն՝ էկէնֆադատէր բանէց Դաւէյթ էդէօկօղոսէ* (63 ԿՈՆ. 759), *միւս առտուն, ապրիլ 13 ուրբաթ օր, կանուխ Մայրեկեղեցին կ՚իջնէ, և է ճամօս Կեցայէն, բնաբան առնելով Պօղոսի խօսքերը. Զաւակէ Աբրահամօս էցեն, և ես, դաշտմեայէ Քրիստոսէ էցեն, սաաեալ ես եւ եւայն* (Բ. ԿՐՆ. ԺԱ. 22-23), *բերանը եկածը կը խօսի, զինքն գովելով և ուրիշները պարսաւելով, և իբր թէ հայրապետական աթոռին պատիւը պաշտպանելով* (63 ԿՈՆ. 761)։ *Առիթ առնելով ևս Զատկին օրը համեմատաբար Քէօչօյօղլի կամ Կէօչէեան ընտանիքէն մէկուն հանդիսով թաղումը, և եւքէն՝ անոր հրաման տուած ըլլալուն պատասխանատուութիւնը պատրիարքարանի պաշտօնեաներուն իրարու վրայ նետելը, կը հետեւցնէ, թէ ոչ սոսա խօսէ՝ հայրն նորա սատանայ է։ Ասոր վրայ, ինքնիրեն սեփականած հրամանան Յիսուսէ Քրիստոսէ և Հօգոյն Սրբոյն, նուիրեալ, կոչեալ և քանանայեալ կը հաչակէ կաթողիկոս ընտրուած Բարթողիմէոս եպիսկոպոսը, պատրիարք Դանիէլ եպիսկոպոսը, փոխանորդ Կարապետ վարդապետը, և իշխանապետներէն չորսը, որ պէտք է ըլլան այլուր յիշուած Սիմոն Փափազեան, Գասպար Ագնաւորեան, Մուրատ Սուրէնեան, և Մարտիրոս Սարաֆլարքէհեասի* (ՊՏՄ.)։ *Այս կ՚ըսէ ու եկեղեցիէն կ՚ելլէ։ Որչափ ալ Գալուստի նզովքը նշանակութիւն չունէր, և ամէնքը կ՚ըսէին թէ ըմնէծօ սորէն և զբանադրանս՝ սա նախանձաեւոր ընդդանէմ, սակայն ժողովրդական գայթակղութիւնը արգելել, և Գալուստի յանդգնութիւնը ճնշել ալ պէտք ըլլալով, ամէնքը պատրիարքին կը դիմեն, որ անմիջապէս հրաման հանէ զայն Արմաշու վանքն աքսորել տալ։ Դանիէլ պատրիարք կը ստիպուի ընդհանուր գայթակղութիւնը հարթելու, և ուզուած հրամանը կառավարութենէ խնդրել* (ՊՏՄ.)։ *Այդ շփոթներուն գրգռիչը Դաւիթն էր եղած, ինչպէս գրեցինք, թէպէտ ինքն մէջտեղ չէր երեւար, զէ այր խօրամանկ էր, և սա երես ըհանթսաբէան ցացանէր* (63 ԿՈՆ. 763)։ *Պէրպէրեան պատմագիրն, թիւրիմացութեան*

ղոհ երթալով, գրգռութեան հեղինակ կը կարծէ Յովհաննէս Ջամաչրճեան եպիսկոպոսը, Զաքարիայի աշակերտներէն, Բարթողիմէոսի ընկերակից, և Պալաթու քարոզիչ (ՊէՐ. 11)։ Սակայն Պէրպէրեան անձնապէս գիտցածը չպատմեր, մինչ ժամանակակիցներ և ուրիշներ (63 ԿՈՆ. 759, ԴԻԻ. Ա. 57, ՄՍՐ. 20), Դաւիթին անունը կու տան իբրև Գալուստի գրգռիչ։ Նոյն ինքն Գալուստ ալ 1802 սեպտեմբեր 30'ին Դաւիթի գրած նամակին մէջ վկայութիւն տուած է ձայն փառաւորութեան և օրհնութեան Տէրին, և գոհութեան էր (63 ԿՈՆ. 760)։ Ուստի համարձակ կրնանք Յովհաննէսի վրայէն հեռացնել, Պէրպէրեանի յանզգաստ քսած այդ կեղարը։

**2226**. Դանիէլ Բարթողիմէոսը Կ-Պոլիս հրաւիրած ատեն, պատճառն ու նպատակը չէր յայտնած, ուստի երբ չաբաթ օր, ապրիլ 14'ին Քումքաբու կը հասնի, և պատրիարքարան կը մըտնէ, կը չփոթի [illegible] էր, և Դանիէլի խորհրդով և Կիւմիւշխանացի Մանուէլ Այթունեան վարդապետին առաջնորդութեամբ Իւսկիւտարի Ս. Խաչ եկեղեցին կ'երթայ մինչեւ [illegible] խռովութիւն։ Բարթողիմէոս յարմէհետէ Արմաշու և Նիկոմիդիոյ առաջնորդութիւնը կը վարէր (§ 2171), յաջողած էր մէկ կողմէն վիճակին ժողովուրդը հայրաբար հովուել, և միւս կողմէն վանքը տեղական արգելքներու դէմ պաշտպանել, ամէն պարագաներով զօրացնել, նուիրատուութիւններով ճոխացնել, շինութիւններով բարեզարդել, և ուսմամբ ու բարեկարգութեամբ ծաղկեցնել, անոր վրայ հիմնելով իւր աշխատութիւնն ու մխիթարութիւնը։ Նա, որ ընդհանուր և գովելի վարուք, խոհական և բարեբարոյ (ՊէՐ. 10), բայց և համեստ իւր ձգտումներուն մէջ, շատ հեռու էր բարձրագահ աթոռներու փափաքէն, մանաւանդ երբ տեսաւ, թէ ահագին խռովութեանց կռուածաղիկ դարձած է իւր ընտրութիւնը։ Ուստի անմիջապէս [illegible] էր, անձամբ անձին հրաժարել ուզեց, իւր անկարութիւնն ու տկարութիւնը առջեւ դնելով։ Մինչև իսկ կը յայտարարէր, որ եթէ իւր

ընդդիմութիւնը, ազգին կամքին անհնազանդութեան սկսելով՝ [illegible], կամ թէ [illegible], կը նախընտրէ անոնց համակերպիլ, քան կաթողիկոսութիւնը ընդունիլ։ Իսկ եթէ հաւանին իւր վիճակը դարձնել, [illegible] կ'ըլլայ ամէնուն։ Բարթողիմէոսի այդ որոշակի և հաստատուն յայտարարութիւնը՝ համոզիչ կը դառնայ ամէնուն, և հակառակը ըսողներ չեն համարձակիր, բայց ընտրութեան գործը, և տէրութեան տուած հրամանն ալ անկատար կը մնան, Դաւիթի օրհնութեան և Գալուստի խաղաղութեան պատճառով (63 ԿՈՆ. 763)։ Բարթողիմէոսի հասնելուն հետ, Գալուստի աքսորին հրամանն ալ նոյն չաբաթ օր, ապրիլ 14'ին առաջուած էր, բայց ինքն տեղեկութիւն չունէր, ուստի Նոր կիրակի առտուն, ապրիլ 15'ին, կը պատրաստուէր եկեղեցի իջնալ, երբ իրեն զգացուցին իրողութիւնը։ Ուստի զգուշացաւ և եկեղեցի չիջաւ, թէպէտև եկեղեցպան Յովհաննէս Լիմոնճեան ամիրային և ուրիշներուն չքաջալերեցաւ ազդարարել, որ չըլլայ թէ իրեն բանադրած Բարթողիմէոսին այցելէն, որպէսզի իրենք ալ [illegible] չըլլան։ Բայց ուղեց անմիջապէս հեռանալ, և չիտակ ինչաւ Պալաթ, Յովհաննէս եպիսկոպոսին հանդիպեցաւ (ՊՏՄ.), և իսկոյն անցաւ Խասքէօյ Մինաս Տարպախանեան ամիրային տունը։ Հոն ալ ինքզինքը ապահով չզգալով, դիմեց Ղալաթիա Գէորգ Աղայէկեանի տունը, որ Աղայէկով կը կոչուէր Ռուսաց դեսպանատան գործակատար ըլլալուն համար։ Անոր խորհրդով գնաց պահուըտիլ Յակոբ Գալֆայի կամ արքունի ճարտարապետի տունը; Պէյլէրպէյի գիւղը (63 ԿՈՆ. 814), վստահանալով [illegible] անբռնաբարելիութեանը (ԴԻԻ. Ա. 59)։ Այսպէս Գալուստ՝ ամէն ճիգ կը թափէր [illegible], թէպէտ Դանիէլ զայն հալածելու հետամուտ չէր, և գործակատարին ալ [illegible] էր, թէ [illegible] (ՊՏՄ.)։

**2227**. Երբոր Բարթողիմէոս և Գալուստ գործէ կը հեռանային, Դաւիթի ասպարէզը կ'ընդարձակուէր, եղած ընտրութիւնն ալ արդէն ոչնչացած կ'ըլլար, և նորէն պէտք էր կատարել։ Կառավարութեան կողմանէ

ալ զգացուած էր այդ պէտքը, և կրկին հրահանգ կը տրուէր պատրիարքին, փութալ և գործը վերջացնել, որ գրգռութեանց ալ առջևն առնուի, որոնք աւելի աճած էին, և ամէն ոք իւր բերման համեմատ՝ մէկը կամ միւսը կը մեղադրէր։

**ԴԱՆԻԷԼԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ**

Դաւիթ նորէն գործի վրայ էր, Դանիէլը կաթողիկոսացնելէն զատ ելք չկար, որով իրեն ալ պատրիարքութիւնը կ'ապահովուէր, զի ուրիշ մրցակից մնացած չէր։ Կ-Պոլսոյ մեծամեծներն՝ ալ համոզուեցան, թէ ուրիշ ելք չունին. նոյնը սկսան Դանիէլի ալ թեկնածուներ, հակառակ իրենց առաջին թեկնածութեանց (§ 2223)։ Իսկ պատրիարքութեան համար ամէնուն առջև սկսաւ բարձրանալ Դաւիթը, իշխաններու աչքին՝ իբրև դժուարութեանց լուծող և կարող անձ մը, և Դանիէլի աչքին՝ իբրև իրեն բարձրացման երախտաւոր մը։ Այդ գաղափարը հետզհետէ զօրացաւ, Դանիէլ ալ իւր յանձնառութիւնը ստորագրեց Մայրաթոռի առաջին պաշտօնագիրին ներքև, ուր իւր և Եփրեմի անունները էին գրուած, թէ խոնարհեցայ ի համակամ խնդիրս համօրէնեան միաբանելոյն որքոյ աթոռոյն, և օրհնեալ էջմիածնայեցւոց, էջմիածնայ և ժողովրդոց մայրաքաղաքիս Կոստանդնուպոլսոյ (63 ԿՈՆ. 806)։ Ասոր վրայ ապրիլ 26'ին, Աշխարհամատրան հինգշաբթիին, պատրաստական գումարումը տեղի ունեցաւ Վէզիրխանը, Զօպան ամիրայի սենեակը, ուր Դանիէլի կաթողիկոսութիւնը որոշուեցաւ, և պատրիարքութեան համար երեք ընտրելիներ առաջարկուեցան, պատգամաւոր Դաւիթ, Կեսարիոյ Ստեփան և Պրուսայի Պօղոս եպիսկոպոսները, և չուտով նախադասուեցաւ Դաւիթը։ Երկու օր ետքը, ապրիլ 28, շաբաթ օր, ազգային ժողով գումարուեցաւ Մայրեկեղեցին առաջինէն աւելի մեծ բազմութեամբ, զի աւելի քան չորս հարեւր անձինք էին հաւաքուած։ Բարթողիմէոս ալ ներկաներուն հետ էր ամենայն զոհունակութեամբ, իսկ Գալուստ իւր թաքստոցէն չէր համարձակած ելլել (63 ԿՈՆ. 808)։ Ժողովին մէջ գլխաւոր բանախօսը եղաւ Դաւիթ, Դանիէլի կաթողիկոսութիւնը առաջարկեց և փաստաբանեց, և ամէնքը հաւանութիւն յայտնեցին։ Այս առթիւ Դաւիթի պատրիարքութեան համար ալ համամտութիւնը երաշխաւորուեցաւ։ Առաջին չնորհաւորութիւններէն ետքը, եկեղեցականներ պատրիարքարան ելան, և հանդիսաւոր թափօր կազմեցին շուրջառներով և ամենայն զարդուք։ Դանիէլն ալ զգեստաւորեալ, վեղարաւորեալ գաւազանն ձեռքը և ամպհովանիի ներքև, առաջնորդուեցաւ լուսազարդուած եկեղեցին շարականներով և սաղմոսներով. բեմ ելլելով օրհնութիւն տուաւ Կեցօ տէր զհայրապետս մեր աղօթքով, և աթոռ բազմելով քարոզեց, Դաւիթի պատրիարքութիւնն ալ հաչակեց խոնարհեալ միաբանեմք պատուելի էջմիածնայ և գլխաւոր վարդապետաց (63 ԿՈՆ. 809), և ամէնուն համահաւանութեամբ և համաձայնութեամբ։ Հանդէսը փակուեցաւ Քրիստոս Աստուած մեր մաղթանքով, և Ով ընտրեցեր աղօթքով (ԺԱՄ. 275-277), մէջը Դանիէլի անունը տալով (63 ԿՈՆ. 810)։ Միւս առտուն, ապրիլ 29, Ցինանց չորրորդ կիրակին, Մայրեկեղեցւոյն մէջ հանդէսները կրկնուեցան, իսկ երկուշաբթի, ապրիլ 30, կը սպասուէր որ նորընտիրները պաշտօնապէս Բարձրագոյն Դուռ երթան և հաստատութիւն ընդունին, և բազմութիւնն ալ այս յաւում խռնուած էր։ Բայց տեղի չունեցաւ։

2228. Յապաղումը լաւ նշանակ մը չէր, և իրօք ալ նոր դարձուածքներ սկսած էին կացութիւնը խառնակելու։

**ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԴԻՄԱԴԻՐՆԵՐ**

Երկու տարբեր կողմերէ էին անոնք, բայց համաձայն գտնուեցան եղածը եղծանելու մէջ։ Գլխաւոր ներշնչութիւնը դուրսէն կու գար, Յովսէփի կողմէն։ Նա իւր կաթողիկոսութիւնը յաջողցնելու համար Կ-Պոլսոյ մեծամեծաց ընտրութեան կամ հաւանութեան անհրաժեշտ ըլլալը գիտէր, և բատ այնմ դիմումներ ալ ըրած էր (§ 2222). բայց հարկաւ ականջը հասած էր, որ իրեն համար նպաստաւոր նշաններ չկային։ Ուստի աւելի կարուկ միջոցի պէտք տեսաւ։ Պօղոս կայսեր համաձայնութիւնը վստահած ըլլալով, Ռուսական կառավարութեան կողմէն գրել տուաւ Կ-Պոլսոյ դեսպանին, այդ նպատակին հոգ տանիլ, և ամէն կերպով աշխատիլ որ Յովսէփի ընտրութիւնը իրականանայ։ Վասիլ Թամարով

դեսպան՝ ցնհրամանը ընդունելով, անհնայն մտադրութեամբ սկսած էր գործին հետեւիլ, և օգտուիլ այն երկպառակութիւններէն, որոնք Հայոց մէջ կը տիրէին։ Բարթողիմէոսի ընտրութիւնը ապարդիւն եղած էր, ընտրեալին հրաժարելովը, պէտք էր Դանիէլին ընտրութիւնն ալ անհետեւանք դարձնել։ Ռուսաց դեսպանին ձեռքն ալ լաւ գործիք մըն էր Գէորգ Աղայէկեան գործակատարը, որ ինքն ալ կատարուած ընտրութեանց հակառակորդներէն էր, և արդէն Գալուստի ալ պաշտպանութիւն բրած էր (§ 2226)։ Թամարով ձեռնարկած միջամտութիւնը յառաջացնելով, սկսած էր Օսմանեան կառավարութեան մօտ պաշտպանել իր կառավարութեան ընտրելին։ Իսկ Ռուսիոյ նպատակը ուրիշ բան չէր, բայց եթէ իրեն հաւատարիմ գործակից մը ունենալ Էջմիածնի աթոռին վրայ, այն կողմերուն մասին իր ապագայ դիտումները դիւրացնելու համար։ Կատարուած գործողութեանց հակառակորդներէն մէկն ալ Բարթողիմէոս Եուսուֆեանն էր, արքունի ժամագործ, որ փոխանակ դուրսէ նոր եկած եպիսկոպոսի մը, իր ծանօթն ու համակիրը կ'ուզէր տեսնել պատրիարքական աթոռին վրայ, ինչպէս էր Պալաթի քարոզիչ Յովհաննէս Ջամաչըրճեան եպիսկոպոսը, բնիկ Բաբերդցի, Զաքարիայի ընտրելագոյն աշակերտներէն, որ անոր մօտ փոխանորդութիւն ալ վարած էր։ Աւելորդ է ըսել, թէ Յովհաննէսի ալ անհաճոյ չէր այդ գաղափարը։ Եուսուֆեան կրցած էր թէ կառավարութեան շրջանակին մէջ պէտք եղած թելադրութիւններն ընել, և թէ ամիրայակից ընկերներու մէջ համամիտներ պատրաստել։ Յայտնի կը տեսնուի թէ Դաւիթի պատրիարքութիւնը, որչափ ալ պաշտօնապէս հաչակուած, իրեն դէմ բաւականաչափ և ազդեցիկ հակառակորդներ ունէր։ Ահա այն ազդակները, որոնք կառավարութիւնը վարանման մատնեցին, երբոր Դանիէլի և Դաւիթի ընտրութիւնները հաղորդուեցան, և չուզեց իսկոյն հաստատութիւնը տալ, այլ պատրուակներու դիմեց յապաղելու համար։ Նախ պատճառեց թէ ընտրողական հանրագիրներուն ներքեւ կնքողներուն թիւը քիչ է, և յետոյ ալ պահանջեց որ Դանիէլի ընտրութեան մասին Էջմիածնէ եկած առաջարկներուն պաշտօնագիրները իսկութեամբ հաղորդուին։ Յովսէփ ինքն ալ Թամարովի գրած էր (ԴԻԻ. Ե. 38), իսկ Թամարով՝ Աղայէկեանի խորհրդով Գալուստի աքսորին յետս կոչումին կ'աշխատէր, իբր զի կրնար գործերը խառնակելու յարմար գործիք ըլլալ։ Դանիէլի մօտ ալ նոյն նպատակով դիմումներ եղան, որուն նա չուտով համակերպեցաւ, զի աքսորի հրամանն ալ ստիպմամբ հանել տուած էր (63 ԿՈՆ. 762), և վերջին ժողովէն ալ առաջ, «Չէնայր ընդդիմակելն նմա չէլէ յայտնապէս» (63 ԿՈՆ. 808), և գործակատարն ալ հրահանգած էր Գալուստին չհետապնդել (§ 2226)։

**ԳԱԼՈՒՍՏԻ ԽՌՈՎՈՒԹԻՒՆԸ**

**2229**. Դանիէլ ընտրեալ կաթողիկոս և Դաւիթ ընտրեալ պատրիարք, այդ տիտղոսներով մեծ գործակիցներ, պատրիարքարանի մէջ կը սպասէին իրենց պաշտօնապէս ճանչցուելուն, իսկ պատրիարքարանի գործերը տակաւին Դանիէլի անունով կը շարունակուէին։ Միւս կողմէն Դանիէլ կ'ուզէր իր կարասին ամփոփել և Իւսկիւտար անցնիլ, որպէս զի անկէ դէպ Էջմիածին կարենայ ուղեւորիլ, սակայն Գասպար Ազնաւուրեան և Յովհաննէս Լիմոնճեան ամիրաներ թելադրեցին քիչ մըն ալ սպասել մինչեւ խնդրոյն վերջանալը (ՊՏՄ.)։ Այսպէս անցաւ ապրիլ 28'ի ժողովին յաջորդող եօթնեակը, երբ մայիս 4'ին ուրբաթ օր, յանկարծ Գալուստ Քումքաբու կու գայ, իր աքսորին յետս կոչուելուն հրամանը ստացած ըլլալով Ռուսիոյ դեսպանին միջամտութեամբ։ Նա իր ազատութեան հետ պատրիարքութեան յուսադրութիւնն ալ ստացած էր Աղայէկեանէ, Դաւիթին ընտրութիւնը ջնջել տալով, եթէ Դանիէլի ընտրութիւնն ալ ջնջելով Յովսէփի կաթողիկոսութիւնը յաջողէր։ Դանիէլ և Դաւիթ, ինքզինքնին ուրախ կը ցուցնեն Գալուստի ազատութեան համդէպ, և իբրեւ պատուելու ցոյց զինքն առաջիկայ կիրակի, Երեւման խաչի տօնին առթիւ, Իւսկիւտարի Ս. Խաչ եկեղեցին պատարագելու կը հրաւիրեն։ Իսկ Գալուստ ազատութեամբը և յուսադրութեամբը խրոխտացած, պատասխան կը ղրկէ, «ճանաչել զնա՝ անձանց խաբեանց

և լսել, աւելցնելով թէ ոչ ես ունիմ իշխանութիւն հրամայել ձեր վերայ, զի արքունի հրովարտակաւ եկեալ կամ աստ։ Գալուստ, որ իւր ատենական (§ 2226) Յակոբ ձեռնաբարպետին ալ բաց պարտամուրհակ տուած էր, վճարել զոր ինչ դրամ էջէ քննոյս յաղագս պարտքերութեան (Դիւ. Ա. 68), արդէն ինքզինքը պատրիարք եղած կը կարծէր։ Գալուստի այս խորհուրդը յառաջ կու գար Աղայէկեանի և Տարապխանեանի թելադրութիւններէն, որոնք գիտակցութեամբ զայն ձեռք առած էին չփոթ ծագեցնելու համար, որով եղածը եղծանել, զի առանց յայտնի և ճշմարիտ պատճառի՝ տէրութեան հրամանով եղածը չէր ընկրկել՝ եւ ըստ օտարնայնի սովորական (63 ԿՈՆ. 813)։ Կարծես թէ ճիշդ այդ նպատակով, Գալուստ մայիս 5 շաբաթ առտու կանուխ Մայրեկեղեցի կ'իջնէ, և կ'երթայ գրաւել նորընտիր Դաւիթի յատկացեալ աթոռը։ Քիչ ետքը Դաւիթ կու գայ, Գալուստ չշարժուիր, և Յակոբ Գանձակեցի վարդապետ, Դաւիթի հետեւորդներէն, կոչեալ է Թողկեն իշխան յանուն ընթացող օրհնի։ Սա ալ այն ատեն վեղարով փիլոնով կ'երթայ կանգնիլ է հողը ծոցվերջնոց, յուզում գրգռելու միտքով (ՊՏՄ.), և մինչեւ իսկ կ'ըսուի, թէ եկեղեցւոյ միջին դրան առջեւ, գաւազանը ձեռքը գըրգռիչ ատենաբանութիւն ալ ըրած է (ՊէՐ. 16)։ Բայց այն օր շփոթը չսկսիր, թէպէտ ժողովրդական խաւերու մէջ կը տարածուի. անշուշտ գրգռողներ ալ պակաս չեն եղած։ Մանուկ Քանթարեան մուշտակագործ մը, գլուխ կը նշանակուի (ՊՏՄ.), և շաբաթ օրուընէ 200 հոգիի խումբ մը կը պատրաստէ, որոնք կիրակի առտու, մայիս 6, Զօրութիւն քառասնից երգին ատեն, Գալուստը տունէն կ'առնեն ու եկեղեցի կը տանին, Դաւիթը աթոռէն կը քաշեն, Գալուստը տեղը կը նստեցնեն, բեմ կը հանեն, քարոզ խօսեցնել կու տան, պատրիարքական գահը կը բարձրացնեն, պատարագին մէջ Գալուստ պատրիարքի անունը յիշել կու տան, Աստուած ընդհանուր որոյցէ կ'աղաղակեն, և վերջէն ալ կը պատրաստուին բազմութեամբ կառավարական դուռը տանիլ, և պատրիարք հաստատել տալ։ Դաւիթ ալ ունէր իր կողմնակիցները, որոնք ընդդիմանալ կ'աշխատէին։ Արդէն երկու կողմէն եկեղեցւոյ մէջ և դուրս սկսած էին հարել զինեալս և տարչել զերեարս, խորտակեալ առախծաքար և գառայն վարագուրէն։ Բայց Դաւիթ խոյս տուած էր պատրիարքարան, իսկ Գալուստ, բերկրութեամբ կը դիտէր իրեններուն յաղթանակը, և բաղձացեալ պատրիարքութիւնը լրացած կը կարծէր (63 ԿՈՆ. 817)։ Իրաւ Գալուստ յուսախաբ պիտի մնար իւր յաջողութեան մէջ, սակայն զինքը իբր գործիք գործածողներուն նպատակը իրականացած էր, զի այդպիսի շփոթի մը վրայ՝ նախընթաց ընտրութիւնը ջնջուած կ'ըլլար։

**ԸՆՏՐՈՒԹԻՒՆ ՋՆՋՈՒԱԾ**

2230. Մայրեկեղեցւոյ շփոթը զինուորական միջամտութիւն հրաւիրեց, և չաւուշ Ենիչէրիներու ջոկատ մը հասաւ, որուն առջեւ բազմութիւնը ցրուեցաւ, բայց գլխաւորներէն 64 (ՊՏՄ.) կամ 70 հոգի (63 ԿՈՆ. 819), որոնք Գալուստի սենեակը խմբուած էին, ձերբակալուեցան, Գալուստն ալ միասին, և տարուեցան Ենիչէրիներու հրամանատարին, անկէց ալ եպարքոսի տեղակալին, քննուելու և դատուելու համար։ Ոմանք Մանուէլ և Աստուածատուր վարդապետները կ'ամբաստանեն, իբրեւ թէ Գալուստի կողմնակիցները Ենիչէրիներու ցուցուցած ըլլան (ՊՏՄ.), և մինչեւ իսկ ըսող կայ, թէ Աստուածատուր՝ Գալուստը հարուածելով վեղարը գլուխէն քաշած ըլլայ (ՊէՐ. 17), սակայն ժամանակակիցը այս վերջին ծայրայեղութիւնը չյիշեր։ Հարցափորձէ մը ետքը, նախ ամէնքը կը բանտարկուին. բայց ոչ է կօճեղ (ՊէՐ. 17), և վերջէն քանի մը հատը թիարան կը ղրկուին (63 ԿՈՆ. 819), մնացածներ քանի խրատել կ'արձակուին, իսկ Գալուստ Իւսկիւտար՝ Աղասի ամիրայի տունը պահպանութեան կը յանձնուի (Դիւ. Ա. 71)։ Մայիս 10'ին, Երեւման Խաչին հինգշաբթին, նոր խլրտում մը տեղի կ'ունենայ չուկային մէջ Գալուստի կողմնակիցներուն կողմէն, և կառավարութեան կը դիմեն զայն պատրիարք ուզելու, բայց եպարքոսին հրամանով չորս գլխաւորներ, Կարապետ Հնավաճառ, և Սարգիս ու Իգնատիոս բեւեռագործներ, և Գէորգ հիւսն կը

*բանտարկուին, և մնացածներ զանակոծ կը հալածուին (ԴԻԻ. Ա. 71)։ Իսկ Գալուստ Աղասին տունէն փախչելով, նորէն Պէյլէրպէյի Ցակոբ ճարտարապետին մօտ կ'ապաւինէր։ Կառավարութիւնը տեսնելով, որ չփոթութեանց աւիթ տուողները հեռացնելէ զատ ուրիշ միջոց չկայ, և անսալով Թամարով գեսպանին թելադրութեանց, որ այստեղի մրցակիցներէն դուրս իր պաշտպանեալին կաթողիկոսացումը իբրև արմատական դարման կը ցուցնէր, կ'որոշէ Դանիէլն ու Գալուստը աքսոր ղրկել։ Այս նպատակով մայիս 13'ին, կիրակի օր, Գալուստ խաբէական պատրուակով, իբրև թէ պատրիարք ըլլալու համար, Պէյլէրպէյիէն եպարքոսարան կը տարուի, և անկէ ուղիղ կ'աքսորուի Լեմնոս կամ Իլիմիա կղզին։ Միևնոյն առեն Մէհմէտ էֆէնտի, եպարքոսարանի աղօթասացը, պատրիարքարան կուգայ և Դանիէլի ներկայանալով կը յայտնէ թէ հրաման ստացած է, զինքն Թենետոս կամ Գօխճա կղզին տանիլ։ Դանիէլ կը զգայ ու կը յայտարարէ, թէ դուրս խօղոնդել դէրսաբեան, և առանց յանցանաց և պատճառի պատիժին համակերպելով, իսկոյն պատուիրակին հետ կը մեկնի նշանակուած տեղը, մինչ չուրջը կը տեսնէ ղոշկէնլերբիլէն և ղորտասը բարեդաղը ժողովրդը (63 ԿԻՆ. 822), որք սիրելի պատրիարքէն կը բաժնուէին։ Կ-Պոլիսէ մեկնելէն երեք օր ետքը, մայիս 16'ին կը հասնէր Թենետոս։ Գալուստի աքսորը դիւրին էր, զի անպաշտօն անձ էր, բայց նոյն կերպարանը Դանիէլի վրայ ալ նկատուեցաւ, զի ապրիլ 30'ին հրաժարեալ էր մատուցած կառավարութեան, իսկ կաթողիկոսութիւնն ալ պաշտօնական հաստատութիւն չէր ստացած (63 ԿԻՆ. 820)։ Միևնոյն առեն կառավարութեան կողմէն հրաման եղաւ ազգին մեծամեծներուն, որ խնդիրի առարկայ դարձած երեք անձերէ, այսինքն Դանիէլէ ու Գալուստէ ու Դաւիթէ դուրս պատրիարք մը ընտրեն և ներկայացնեն։ Այս կերպով կը լրանար Թամարովի հովանաւորութեամբ Աղայէկեանի կազմակերպած ծրագիրը, որով ջնջեալ և չեղեալ կը դառնար ապրիլ 28'ի ընտրութիւնը, և նոր ընտրութեան դուռ կը բացուէր։ Ինքն Թամարով ալ լաւ գիտէր եղելութեանց նշանակութիւնը, և ըստ այնմ կը բացատրէր իր բարեկամ Սարգիս Լաշկարովին, ու մայիս 16'ին Պէօյիւքտէրէի ամառանոցէն կը գրէր, թէ Մեր հաւատարմոց բարեկամ յարգելի Յովսէփ արքեպիսկոպոսն, այս, ընտրեալ լինելոց է, և լինելոց է պատրիարք Էջմիածնի (ԳԻԻ. Թ. 334)։ Այդ պարագային մէջ ալ՝ պէտք չէ մոռցութենէ վրիպեցնել Դաւիթի չահադէտ հնարիմացութիւնը, որ կացութիւնը չփոթած տեսնելուն, ուղղութիւն և կարծիք փոխելով, Յովսէփի պաշտպաններուն կողմը կ'անցնէր, և Ռուսական քաղաքականութեան պաշտպան ձևանալով թէ ինքզինքը վտանգէն կ'ազատէր, և Դանիէլի ու Գալուստի արկածէն զերծ կը մնար, և թէ իր ապագայ յաջողութեան բաց դուռ կը թողուր։ Թիւրիմացութեան հետևանք է կարծել թէ այս առթիւ Դաւիթ ալ աքսորուած ըլլայ, ինչպէս նաև Յովհաննէսն ալ աքսորուած ըսել (ԴԻԻ. Ի. ՋԵ), որ թուականներու չփոթութեան հետևանքներ են։*

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՏՐԻԱՐՔ**

**2231**. *Հրամայուած ընտրութեան համար ազգային ժողովը գումարուեցաւ մայիս 18'ին, Համբարձումին յաջորդող ուրբաթ օրը (ՊՏՄ.), և ընտրեալը եղաւ Յովհաննէս Զամաչըրճեան, զոր արդէն յիշեցինք թէ Բարթողիմէոսի (§ 2225), և թէ Դանիէլի (§ 2228) ընտրութիւններուն առթիւ։ Բարթողիմէոսի դէմ պատրաստուած գրգռութեան հեղինակը՝ Յովհաննէսին ըլլալը բացատրեցինք արդէն (§ 2225)։ Թէպէտ վերջին անգամ ալ՝ Դանիէլի և Դաւիթի ընտրութեանց եղծուելուն առթիւ՝ նորէն Յովհաննէս գրգռիչ ըլլալ կը կարծուի, սակայն պատմական եղելութիւններ Յովհաննէսի յատուկ դեր մը վարած ըլլալը չեն ցուցներ։ Կասկածին գլխաւոր պատճառներն են Նուստ-ֆեանի հետ մտերմութիւնը (63 ԷԻՆ. 812), և վերջէն ինքն ընտրուած ըլլալը։ Զուգելով ալ ուրանալ, թէ գոնէ կամակցութիւն մը ունեցած ըլլայ, շատ կչիռ ունի իրեն մասին դրական գործ մը պատմուած չըլլալը, մանաւանդ որ իբր պատրիարքական ընտրելի, իրեն նախադասելի մէկը չկար մէջտեղ, որ բուռն մրցակցութիւն մղէր։ Միայն թէ իրեն հա-*

մոր յաջողութեան միջոց եղաւ՝ Աղայէկեան և Նուռուֆեան խմբակներուն իրարու մերձեցումը, անիկայ Յովհաննէսի պատրիարքութեանը և ասիկայ Յովսէփի կաթողիկոսութեանը հաւանելով, և այսպէս միացեալ զօրութեամբ կացութիւնը փոփոխելու կերպը գտնելով։ Հետեւապէս Մանուէլ վարդապետ, Դանիէլի եռանդուն անձնուէրը, միայն իւր սիրտին վշտացածը յայտնած կ'ըլլայ, երբոր Յովհաննէսը՝ գողտուկ և հէգ և որմամբ խորհրդականօք և դաւեց և յաջողակա-կան խաղաղութեանց կը կարծէ (63 ԿՈՆ. 812)։ Իսկ Պէրպէրեան, բոլորովին եղելութիւնները կ'այլայլէ, Յովհաննէսի պատրիարքութիւնը Դանիէլի աքսորէն առաջ դնելով, և Յովհաննէսը Դանիէլի աքսորին հեղինակ ցուցնելով (ՊԷՐ. 18)։ Մենք սկզբնական և ժամանակակից աղբիւրներէ քաղելով, գրեթէ օրագրական ձեւով պատմեցինք ամէն պարագաները։ Եւ եթէ քիչ մըն ալ մեր սովորական ոճէն աւելի երկարեցինք, կ'ուզէինք որ այդ հռչակուած ու հետաքրքրութիւն շարժող, և միանգամայն տգեղ կերպարան առած, Դաւիթ-Դանիէլեան կոչուած, բայց սկզբնապէս Յովսէփեան եղած խնդիրը, իւր իսկական ճշգութեան մէջ ներկայացուէր։ Նոյն ձեւով պիտի շարունակենք պատմել այդ խնդիրին յետագայ մասերն ալ։

2232. Յովհաննէս մայիս 18'ին ընտրուելով, միւս օր չորեքշաբթի, մայիս 19'ին, պետական հաստատութիւնը ստացաւ, և ֆերմանը հանդիսիւ եպարքոսին մօտէն Մայրեկեղեցի բերուելով, ու պատրիարքարան եկնելով՝ պաշտօնին ձեռնարկեց, երբ Դանիէլ և Գալուստ իրենց աքսորավայրերը հասած էին։

**ՅՈՎՍԷՓԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ**

Իրեն առջեւ ծանր աշխատութիւն մը ունէր նա, պառակտեալ և խռովեալ ժողովուրդը հանդարտութեան առաջնորդել։ Այդ նպատակին համար պէտք էր միանգամ ընդմիշտ վերջացնել կաթողիկոսական խնդիրը, որ կռուախնձոր էր դարձած։ Արդէն կնճիռ սակաւ լուծման մը կը յանգէր, քանի որ գլխաւոր ընտրելին Դանիէլ ասպարէզէ դուրս էր հանուած, և դուրսէն ընտրելին Բարթողիմէոս ինքն ասպարէզէ քաշուած էր։ Մնացած երկու աւելի խօսուածներուն, Յովսէփի և Եփրեմի մասին եղած դժուարութիւնը հաւասարապէս օտար հողի վրայ և օտար հովանաւորութեան ներքեւ գտնուելնին էր, և եթէ այդ պարագան նկատողութեան պիտի չառնուէր, հարկաւ նախադասելի էր Յովսէփ, որ իրեն հետ աւելի կարողութիւն և գործունէութիւն կը բերէր, և Հայոց համար զօրաւոր պաշտպանութեան միջնորդ կրնար ըլլալ։ Գալով արգելք կազմող պետական պարագային, ազգօրեւէ պատասխանատուութենէ զերծ կը մնար, քանի որ Ռուսական դեսպանին ալ դու միջամտութիւնը՝ Օսմանեան կառավարութեան վրայ ճնշում կը գործածէր։ Այդ մտածումները կ'արդարացնէին Յովհաննէսին մտադրութիւնը, երբոր Յովսէփի կաթողիկոսութիւնը յաջողցնելու յանձնառու կ'ըլլար, ինչպէս նաև ազգին մեծամեծները և ազգային ժողովը, երբոր իրենց ալ այդ եզրակացութեան կու գային։ Յովհաննէս իրեն առաջին գործերէն մին ըրաւ խնդիրը վերջացնել, և Յովսէփի վրայ կաթողիկոսական ընտրութիւն կատարել տալ, առանց ազգին ու պատրիարքարանին ալ պատասխանատուութեան ներքեւ թողլու։ Երբ Թամարով կառավարութեան վրայ ճնշում կը բանեցնէր, կառավարութիւնը պաշտօնապէս անոր առաջարկը կը հաղորդէր պատրիարքին, իսկ գաղտնապէս հակառակը կը թելադրէր։ Յովհաննէս այնպէս իմն դարձուց գործերը, որ վերջապէս կառավարութիւնը բացարձակապէս իւր հաւանութիւնը յայտնեց, և ասոր վրայ 1800 մայիս 31'ին, Հոգեգալստեան հինգշաբթի օրը, ազգային ժողով գումարուեցաւ, և թէպէտ մեծամեծներէն ոմանք զգուշացան ներկայանալ, բայց ժողովը օրինաւորապէս տեղի ունեցաւ. Յովհաննէս իբրեւ գործողութեան հիմն մէջտեղ դրաւ Մայրաթոռոյ միաբանութեան երկրորդ հանրագրութիւնը, Դանիէլի և Յովսէփի անուններով (§ 2221), և Դանիէլը ընտրելու անհնարութեան առջեւ, ամէնքը Յովսէփի անունին վրայ միացան, մանաւանդ որ անոր հակառակորդներուն գլխաւորին՝ Սիմէոն Փափազեանին ալ սպառնալիք եղած էր կառավարութեան կողմէ, և անոր ալ խոստացեալ էր այլ կոչումն, որ է

աքսորավայր, եթէ ես ողջեայէ (ԴԻՒ. Թ. 334)։ Այսպէս ապրիլ 12'էն հաշուելով (§ 2224) 50 օրուան մէջ, երեք կաթողիկոսական ընտրութիւններ կատարուած եղան։ Մանուէլ, իր Դանիէլեան անկապար եռանդին մէջ, կը գրէ թէ Յովհաննէս ասաց ոչ և ահեակ նկատելոյ, միայն զգեստս և զանձինն էր խորհելով (63 ԿՈՆ. 824) վարուած ըլլայ այդ պարագային մէջ, սակայն անաչառ պատմութիւնը պէտք է ընդունի, թէ նա այլապէս գործել չէր կրնար, Դանիէլի աքսորէն, ժողովրդական յուզումէն, Ռուսական ճնշումէն, և Տաճկական համակրութենէն եաքը։ Թէ ոչ անպայման ժամանակաւ աթոռը անտէրունջ և ազգը վրդովուած պիտի պահէր, որ հնարութեան սեւակէտէն ալ նախընտրելի կացութիւն մը չէր, որչափ ալ Դանիէլի անձնական օգտին համաձայն ըլլար։ Պարագայից համեմատ գործող, և սասանելագոյն փոսին առջեւ մանաւոր պարագաներ անտեսող իշխանաւորներ, աւելի գնահատման արժանի պէտք է սեպուին, քան թէ միզադրմանց ենթարկուին։

**2233.** Կատարուած ընտրութիւնը պետութեան հաղորդել, պաշտօնական ձեւակերպութիւնները լրացընել, և հաստատութեան հրովարտակը ընդունիլ, ինչչափ ատեն առեւցին, կամ ինչ գործողութեանց տեղի տուին, ճշդուած չունինք. միայն գիտենք թէ օգոստոս 2'ին Կ-Պոլսէ կը մեկնէր Դաւիթ՝ ստացուած հրովարտակը Յովսէփին հասցնելու համար (63 ԿՈՆ. 911, ԴԻՒ. Ա. 77), ուսկից կը հետեւի թէ ամբողջ յունիս և յուլիս ամիսները այդ ստացութեան նուիրուեցան։ Իսկ կացութիւնը հանդարտեցաւ, և նոր միջադէպներու առիթ չընծայեց։ Քանի որ Դաւիթ՝ Յովսէփի կաթողիկոսութեան հրովարտակը տանողն էր, և ընտրութեան գործը լրացած էր, անհիմն կը դառնայ Պէրպէրեանին գրելը, թէ Յովհաննէս իշխանաւորները հաճեցոյց յանդրէն զՊապին ի կաթողիկոսութեան էջմիածնի, և թէ այդ նպատակով Դաւիթը էջմիածին առաքեաց, զի անդ քուէ ընտրեալ և ձեռնադրեալ կաթողիկոսանալու (ՊԷՐ. 18)։ Յովսէփին դառնալով, նա ամենայն սրտութեամբ և ամէն միջոցներով

**ՅՈՎՍԷՓԻ ՆՈՐ ՃԻԳԵՐԸ**

կաթողիկոսանալու եռանդն էր։ Արդէն 1800 ապրիլ 12'ին, որ է Բարթողիմէոսի Կ-Պոլսոյ մէջ ընտրուելուն օրը (§ 2224), երբ Յովսէփ հազիւ թէ Մայրաթոռի միաբանութեան գիրը առած կրնար ըլլալ (§ 2222), նա արդէն Սրբոյ աթոռոյն անուանեալ կաթողիկոս կը ստորագրէր (ԴԻՒ. Ե. 39, ԴԻՒ. Թ. 333)։ Անհաճոյ զգացում մը ազդելու չափ խրախտ և յանձնապաստան է Յովսէփի լեզուն, երբոր Դանիէլի և ամիրայից գրելով, կ'ազդարարէ որպէսզի իմացեալ զինէաւոր ծառայութեան մեր և զընտրութեանն (ԴԻՒ. Ե. 33), և զկատարեալն իմ ի վերայ հանդերձ ազգին, հաստատուն և եկեղեցւոյն (ԴԻՒ. Ե. 34), համակերպին իրեն ընտրութեան, պատիւ համարելով աթոռ բարձրացնել ի ցեղէ Լուսաւորչին սրբոյ Գրիգորի, յորմէ եմք մեք, կ'ըսէ վստահօրէն։ Միանգամայն կը սպառնայ, թէ իրմէ զատ ոմն ընտրեալ կաթողիկոս լինել ոչ կարէ, և ոչ իշխել ի վերայ կոչմանց, և այս պատճառաւ կը յաւելու, որ եթէ ընտրեալ զոք իշխէ և տուեալ, դատապարտեսցին ընտրեալն այն (ԴԻՒ. Ե. 35)։ Դանիէլի ալ ակնարկելով, որ միաբանութեան առաջին ընտրելին էր, կը գրէ թէ զանձն և զգահ համարեսցէ ի ծառայութիւն իմ զաւակօք ձեր (ԴԻՒ. Ե. 38)։ Իր միտքը յաջողցնելու համար մինչեւ իսկ էջ կը յայտնէ ի վերայ Պօղոսի անուանել, այլ մտածելով, թէ յոյժ յաճ գնաց ի սուրբ աթոռն (ԴԻՒ. Ե. 39), իր աշակերտ Նոր-Նախիջեւանցի Կարապետ վարդապետը Կ-Պոլիս կը ղրկէ, բոլոր ամիրաներուն զատ զատ յանձնարարականներով, որոնցմէ 12 հոգի յանուանէ յիշուած են (ԴԻՒ. Ե. 38)։ Որչափ ալ յախուռտաբանութիւն ըլլան Յովսէփի գրածները, սակայն անշուշտ Կ-Պոլսեցոց վրայ իրենց ազդեցութիւնը կ'ունենային, նկատելով անոր Ռուսաց մայրաքաղաքին մէջ ստացած դիրքը, և Ռուսական գահապանատան ամէն կերպով անոր օգտին ծառայելը։ Այս պարագաներն ալ կը ցուցնեն թէ ինչ զգուշութեամբ Յովհաննէս և Կ-Պոլսեցիք կը վիջանէին Յովսէփի ընտրութեան, և հրովարտակը ստանալով կը ղրկէին անոր։ Յովսէփ հազիւ թէ այդ եղելութեանց լուրը կ'առնէր արքունիք հասած անգլեկութիւններէն, և կ'ապահովուէր իր կաթողիկոսութեան վրայ, օգոստոս 4'ին Պետրբուրգէ կը մեկնէր (ԵՐՑ.

Ա. 6)։ Նախ կու գար Մոսկուա, և Մոսկուայէ Նոր-Նախիջեւան, և անկէ Աստրախան (Դիւ. Թ. 342), ուր կը մտնէր սեպտեմբեր 12'ին, սպասելով հրովարտակին, զոր Դաւիթ Կոստանդնուպոլիսէ կը բերէր, իրեն ձեռքը հասցնելու համար։

2234. Յովսէփ տակաւին Նոր-Նախիջեւան եղած ատեն, օգոստոսի մէջ, Յովսէփ կաթողիկոս վերատեսութեամբ և ստորագրութեամբ կոնդակ կը գրէ (Դիւ. Թ. 334), իսկ սեպտեմբեր 12'ին Աստրախան հասած օրը՝ կը ստանայ Դաւիթի Կ-Պոլիսէ գրած նամակները։ Քանի մը օր ետքը Դաւիթի ուղղած նամակով լուր կու տայ, թէ ձեռքը հասած են հրովարտակին պատճէնն ու թարգմանութիւնը, դեսպանէն Պետրբուրգ ղրկուած և անկէ իրեն հաղորդուած։ Ուրախութիւն կը զգայ, որ իւր անունին յիշատակութիւնը սկսած է Կ-Պոլիս, Մոսկուա, Նոր-Նախիջեւան, Գրիգորուպոլիս, և յայլ տեղիս։ Բայց կը սպասէ Ռուսաց կայսեր բարեհաճական հրովարտակին վասն ընդհանուր Հայոց ազգին կաթողիկոսութեան, զոր լսած է թէ պատրաստեալ են, և յայս հանի օրս կը յուսայ ստանալ։ Ռուսաստանի առաջնորդութիւնը փոխանցած է Եփրեմի, Էջմիածինի տեղապահութիւնը կը հաստատէ Մինասի վրայ, բայց և Դաւիթի իրաւունք կու տայ զամենայն ի կարգի պահել ընդ հովանեաւ. և կը խոստանայ Յովհաննէսի օրհնութեան կոնդակ ղրկել յետ ընկալման օծման զշնորհս սուրբ Հոգւոյն ի գլուխն։ Դաւիթի ուղղուած այդ գրութեան (Դիւ. Թ. 342-356) թուականը գրուած չէ, բայց սեպտեմբեր 12'էն շատ ետքը գրուած պիտի չըլլայ, վասնզի իբր կենդանի յիշուած Մինաս տեղապահը վախճանած է հոկտեմբեր 22'ին, ի չորրորդ ժամու ցերեկին (Դիւ. Թ. 339), որով Դաւիթ զօրութեամբ վերոյիշեալ գրութեան առացած կ'ըլլայ բուն տեղապահութիւնը։ Յովսէփ տակաւին Աստրախան կը մնայ, մինչեւ որ սպասածը կը ստանայ հոկտեմբեր 30'ին, նաեւ հրաման զինուորական ուղեկցութեամբ մինչեւ Էջմիածին երթալու, և ցման վայելելու կանուխ ունեցած 2000 ռուբլու ռոճիկը (ԽՐՑ. Ա. 10)։ Ինքն ալ միեւնոյն ատեն Էջմիածինի մէջ ըլլալիք պատրաստութիւնները կը հրահանգէ, և հազիւ դեկտեմբեր 12'ին Աստրախանէ կը մեկնի, և 17'ին կը հասնի Ղզլար։ Հոն կը սպասէ մինչեւ որ Կնօրին զօրավար, Կովկասեան գաւառներու կողմնակալը, ճանպուն ապահովութեան պատրաստութիւնները լրացնէ։ Անկէ կը մեկնի Մոզդոկ, հոն ալ կը մնայ քանի մը օր, և ապա կ'ուղեւորի Կովկասի լեռնաշղթան անցնելու, գնդապետի մը և հարիւր խազախ հեծեալներու ընկերակցութեամբ։ Հազիւ 1801 տարւոյ փետրուար 6'ին կը հասնի Դուշէթ, ուսկից փետրուար 11'ին, Մեծպահոց երկրորդ երկուշաբթին, մուտ կը գործէ Տփղիս, արտակարգ փառաւորութեամբ և հանդիսական ցոյցերով։ Նկատելի է որ բաւական դանդաղաքայլ եղած է Պետրբուրգէ Տփղիս հասնիլը, վեց ամիս ամբողջ, օգոստոս 4'էն փետրուար 11։ Այսր պատճառներուն մէջ եթէ պիտի հաշուենք պաշտօնագիրներու սպասելը և եղանակին խստութիւնը, պէտք չէ զանց ընենք նաեւ Յովսէփի՝ փառքերու և ցոյցերու փափաքը, որպէսզի ամէն տեղ պատրաստութիւններ կատարուին ընդունելութիւնը շքեղ ընելու համար։

ՄԻԱԲԱՆՈՒԹԵԱՆ ԴԻՄՈՒՄԸ

2235. Յովսէփի այդ երկարատեւ ուղեւորութեան միջոցին Էջմիածինի կացութիւնը, անհամբեր ակընկալութիւն էր։ Երբ վարանումները փարատեցան, և կամայ կամ ակամայ, բայց հարկաւորը կամաւոր ընելու խոհականութեամբ, միաբանութիւնը համակերպեցաւ Յովսէփի կաթողիկոսութեան, այժմ կը սպասէր քաղել՝ իրմէ խոստացուած, Ռուսական կառավարութենէ յուսադրուած, և երեւակայութեամբ աճեցուցուած բարիքները։ Հոկտեմբեր 31'ին գրութեամբ միաբանութիւնը Յովսէփէն կը խնդրէր մի եւս ամենևին յետաձգել, այլ փութացուցանել զբարեբեր ծագումն շնորհաշուք ձեռացդ, որովհետեւ տասն ամիս է, կ'ըսեն, որ աթոռը անտերունջ է, ի մէջ օձից և կարծաց բնակելով՝ ամէն կողմէն կը նեղուինք, յարդարութեամբ յամենայն տանէ մի չէ մնալ ի սուրբ տանս. Կ-Պոլսոյ նուիրակը Գայլուստ աքսորուած է, Տաճկահայոց չորս շրջանակներ առանց նուիրակի մնացած են, և միւսոնը մէջն է ի պղտորումն։

Միաբանութիւնը կը սպասէ որ դեկտեմբերի մէջ հարկաւ Էջմիածին հասած ըլլայ (ԴԻԻ. Թ. 340), բայց մենք տեսանք որ հազիւ թէ դեկտեմբերին Աստրախանէ կը մեկնէր։ Կարծես թէ այնչափ ճիգերով ու հնարքներով ու ստիպումներով ձեռք ձգուած կաթողիկոսութեան գործունէութենէն աւելի՝ երեւոյթն էր Յովսէփը շահագրգռողը։

**ՅՈՎՀԱՆՆԷՍԻ ԸՆԹԱՑՔԸ**

2236. Իսկ Կոստանդնուպոլսոյ մէջ Յովհաննէս պատրիարք ազգին մեծամեծներուն գործակցութեամբ, կ'աշխատէր հին գժտութեանց բոլոր պատճառներն ու հետեւութիւնները ջնջել վերջացնել։ Կաթողիկոսական ընտրութիւնը մայիս 31'ին լրացած էր (§ 2232), բայց նուիրագործութիւն չէր առած ընտրեալին օծմամբը, և առկախ վիճակը կը շարունակէր։ Միտքեր տակաւին վրդովեալ էին, և եղածը եղծանելու ձգտումներ սովորական չէին. և երրորդէն ետքը չորրորդ ընտրութիւն մըն ալ պատրաստողներ կային, գըլխաւորապէս Դանիէլեան խմբակէն, քան թէ Դանիէլէն։ Մեր տեսութեամբ ալ Դանիէլին անիրաւիլ կ'ըլլար՝ փառասէր թեկնածութիւն վերագրելով իրեն, սակայն լիովին համակերպող մըն էր իրեն համակիրներուն ձեռքը։ Բացառիկ պէտքերու բացառիկ դարմաններ կրնան՝ արդարանալ, և Յովհաննէս այդ սկզբունքին հետեւած պիտի ըլլայ Յովսէփին կաթողիկոսութեան՝ ծիսական նուիրագործում տալով։ Պատմած ենք Երուսաղէմի պատրիարք Պետրոս Եւդոկիացիին մահը 1800 յունիս 18'ին (§ 2181), կաթողիկոսական պայքարին ամէնէն տաք միջոցին, Դանիէլի աքսորուելէն քիչ օր ետքը (§ 2230)։ Այնչափ խառնակ ու շփոթ, խեղճ ու անկերպարան էր Պաղեստինի վիճակը՝ Գաղղիացւոց արշաւանքին և Օսմանեանց պատերազմներուն պատճառով, որ Երուսաղէմի միաբանութիւնը՝ Կ-Պոլսոյ պատրիարքին, զոր Դանիէլը կ'ենթադրէր տակաւին, կը յանձնարարէր իւր ժողովով յարմար մէկը ընտրել և հաստատել տալ, իրեն կողմէ ալ փոխանորդ Յակոբ եպիսկոպոսին կը յանձնարարէր պատրիարքարանի գործակցիլ (ԱՍՏ. Բ. 135)։ Պարտուպատշաճ խորհրդակցութիւններէ ետքը, պատրիարք կ'ընտրուէր Թէոդորոս Վանեցի եպիսկոպոս, Երուսաղէմի դարպասընկալը, և գործը լըրացեալ ճանչնալով անոնց յիշատակութիւնն ալ պիտի սկսէր յուլիս 14'ին, Վարդավառի նաւակատիքին կամ Տապանակի տօնին օրը։ Այդ նոր յիշատակութենէն կ'օգտուէր Յովհաննէս էջմիածինի աթոռին համար ալ, փոխանակ հանգուցելոյն՝ նոր գահակալը յիշատակել տալ, և նոյն օր Յովսէփ ալ կը յիշուէր իբրեւ կաթողիկոս։ Այս է ահա այն բացառիկ դարմանը, զոր վերեւ յիշեցինք, որպէսզի միանգամընդմիշտ կաթողիկոսական ընտրութիւնը լրացեալ և վաւերացեալ գործի կարգ անցնի, և ոտընձգութիւնք վերջանան։ Բացառիկ անուանեցինք եղած գործողութիւնը, զի հնաւանդ և հաստատուն կանոնին, և նոյնիսկ կաթողիկոսական մաշտոցին խորագիրին համեմատ, ընտրեալը կ'օծուի, և յետ օծման կոչի Կաթողիկոս Ամենայն Հայոց (ԿԹՂ. 19)։ Յովհաննէսի բացառիկ կարգադրութիւնը Դանիէլեանց առջեւ դուռը գոցել մըն էր, և անոնց եռանդուն պետը, Մանուէլ Կիւմիւշխանեցին, Յովհաննէսը կ'ամբաստանէ, թէ հրամայեաց զՅովսէփ արհին առանց օծութեան կաթողիկոս յիշատակել (63 ԿԻՆ. 909)։ Մենք ալ պաշտպան կանգնելով հանդերձ հնաւանդ և կանոնական սովորութեան, խիստ դատաստան պիտի չընենք Յովհաննէսի դէմ, որ այդ բացառիկ միջոցին կը դիմէր երկար ատեններէ իվեր ազգը պառակտող և կիրքերու ասպարէզ տուող կաթողիկոսական խնդիրը վերջացնելու։ Միայն թէ ինչ որ իբրեւ բացառիկ կրնար արդարանալ, այժմ սովորական դարձած է, մանաւանդ Ներսէս Ե Աշտարակեցիէ ասդին, որ իբրեւ եռանդուն Դանիէլեան և Մանուէլի գործակից, Յովհաննէսը սաստիկ մեղադրելէն ետքը, ինքն նոյնը գործադրեց և այն ալ իրեն համար և իւր հրամանով։ Ինչ որ Յովհաննէս յուլիս 14'ին Կ-Պոլսոյ մէջ կը կատարէր, Մոսկուայի մէջ կը կատարուէր յաջորդ յուլիս 15 օրը, Վարդավառի կիրակիին, Յովսէփի ներկայութեան (ԴԻԻ. Թ. 343)։ Ըստ այսմ Յովսէփ կրկին Պետրբուրգ դարձած պիտի ըսենք, քանի որ վերջին անգամ անոր [illegible] նեցաւ օգոստոս 4'ին, հրաժեշտի [illegible] տալով անձամբ Պօղոս կայսեր ([illegible]

**2237**. Յովհաննէսի վրայ իբրեւ մեղադրանք կը յիշուի նաեւ, որ պատրիարք ըլլալէն ետքը, չփութաց անմիջապէս Դանիէլը ու Գալուստը աքսորէն դարձնել տալ, եւ մինչեւ իսկ այդ միտքով իրեն եղած դիմումներուն ականջ չկախեց (63 ԿՈՆ. 912): Թերեւս խնդիրը իր բացարձակ եւ պարագաներէ անկախ տեսակէտէն առնելով, մենք ալ ձայնակցէինք մեղադրողներուն. սակայն պէտք չէ դիտողութենէ վրիպեցնել, թէ մեղադրողները բոլոր իրենց միտքը Դանիէլի վրայ ամփոփողներն են, որոնք Դանիէլը մէջտեղ հանելով կ'ուզէին Յովսէփի վրայ եղած ընտրութիւնը եղծանել, եւ նորէն Դանիէլի վրայ չորրորդ ընտրութիւն մը կատարել, որչափ ալ պիտի չկարենար խաղաղ եւ վճռական իրականութիւն ունենալ: Յովսէփի ունեցած դիրքը եւ գործածելիք ազդեցութիւնները գիտնալով, յայտնի էր թէ հետեւանքը պիտի ըլլար, պառակ մը եւս երկարել ազգին տագնապը եւ աննպատակ վրդովմանց եւ երկպառակութեանց տեւողութիւնը: Յովհաննէս եթէ իր ընտրութենէն անմիջապէս ետքը աքսորեալներուն վրայ մտադրութիւն չդարձուց, սակայն այդ բանն ըրաւ անմիջապէս որ յուլիս 14'ի յիշատակութիւնը հրամայեց (§ 2236), եւ Յովսէփի Ռուսաց կառավարութեան կողմէ հաստատուած ու պատուուած, եւ դէպ Էջմիածին ճամբայ ելած ըլլալուն լուրը առաւ (§ 2234): Նա այլեւս վստահութիւն գոյացուցած էր, թէ ամուլ պիտի մնային տարաժամ ճիգերը: Կիւմիւշխանացին կը գրէ, թէ Յովհաննէս մեծ առ[illegible]ր պահանջած ըլլայ, եւ Մ[illegible] Ա[illegible] ամիրան՝ պատ[illegible] [illegible] եւ [illegible]րի հանել տուած [illegible] [illegible]ն հրովարտակը [illegible] որ պետական [illegible], յու կը հաս[illegible] [illegible]ին ազդեցիկ [illegible]րենց մարդիկ [illegible] որ չէր գործ[illegible] պաշտօնական [illegible] է հնար չէ [illegible]նէլ, բամ[illegible] է գործել, երբ այլեւս գործին անմխաս լմնելուն համոզում գոյացուցած է: Դանիէլի ազատութեան հրովարտակը կ'առնուի սեպտեմբեր 17'ին եւ Գալուստինը սեպտեմբեր 22'ին (ԴԻԻ. Ա. 78): Դանիէլ 26'ին Թենեդոսէ մեկնելով, չիտակ կու գայ Ռոտոսթոյ, ուր կը գտնուի սեպտեմբեր 29'ին Վարագայ խաչին օրը: Սուրբ Բեւեռին ուխտը կատարելով նորէն կը նաւարկէ Պանտըրմա անցնելու համար, բայց սաստիկ ալեկոծութեամբ, կ'իյնան Հէրէկ (63 ԿՈՆ. 914), որ պէտք է ըլլայ Էրտէք. եւ անկէ ցամաքի ճամբով կը հասնի Պանտըրմա հոկտեմբեր 5'ին, ուսկից Պաղտասար փոքրաւոր Կ-Պոլիս կը յղէ, իր իրեղէնները հաւաքելու: Այս առթիւ Յովհաննէս անոր համար Եւդոկիոյ առաջնորդութեան կոնդակ կը հանէ, եւ փոքրաւորին կը յանձնէ, որ Պանտըրմա կը դառնայ նոյեմբեր 4'ին, եւ 13'ին Դանիէլ ճամբայ կ'ելլէ Եւդոկիա երթալու, բայց Մահոլըճ հասնելով կը դադարի: Իսկ Գալուստ Լեմնոսէ դառնալով ազատութիւն կը ստանայ Նիկոմիդիա երթալ, եւ ընդհատուած նուիրակութեան շրջանը լրացնել (63 ԿՈՆ. 915):

**2238**. Կաթողիկոսական խնդիրին ընթացքը շարունակելով, պէտք է նորէն Տփղիս դառնանք, ուր Յովսէփ հասած էր 1801 փետրուար 11'ին (§2234), [illegible] (ՄՍՐ. 32): Բոլոր քաղաք դուրս էր թափուած, եկեղեցականութիւնը երկար թափօր էր կազմած, թնդանօթներ գալուստը կ'ողջունէին, ինքն ալ շուրջառով ու գաւազանով, եւ ամպհովանիի ներքեւ թափօրին հետեւելով, կը մտնար Վանքի եկեղեցի կոչուած Հայոց մայրեկեղեցին: Այնտեղ կը քարոզէ, մաղթանքներ կ'ընէ Ռուսաց կայսեր համար, եւ ժողովուրդը կ'օրհնէ, ու կ'անցնի Վրաց Ս. Սիոն մայրեկեղեցին, ուր տակաւին անթաղ կը մնար իր մեռելին ու պաշտպանին Գէորգի թագաւորին մարմինը: Այնտեղ ալ կ'աղօթէ դագաղին փաթթուած, վրացերէն կը քարոզէ, Ռուսաց կայսեր կողմէ վախճանեալ թագաւորին ուղղուած գիրը կը կարդայ, հոգեհանգիստ կը կատարէ, եւ անկէ ետքը կ'երթայ Մող-

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՒ ԱՔՍՈՐՆԵՐ

ՅՈՎՍԷՓ Ի ՏՓՂԻՍ

*նու թաղը իջեւանիլ իր եղբօրորդւոյն՝ հա-զարապետ Սողոմոն, Արղութեան իշխանին տունը։ Էջմիածինէ հրաւիրակ եկող չորս գլխաւոր եպիսկոպոսները, ձիւնապատ ճան-պաներէն արգելուելով, յաջորդ օրը՝ 12'ին հասան, և էին Սիմէոն աթոռակալ, Թա-դէոս ատենադպիր, Անդրէաս գրագիր, և Բարսեղ Աշտարակեցի եպիսկոպոսները։ Դա-ւիթ Էջմիածին էր մնացեր իբր տեղապահ։ Յովսէփ քանի մը օր այցելութիւններով զբաղեցաւ, մինչեւ որ Էջմիածին ուղեւորի, ուր մտադիր էր մեկնիլ մարտ 1'ին, Մեծ-պահոց չորրորդ ուրբաթ օրը, պատշաճ ա-տեն օծումը լրացնելու, և մարտ 24'ին զա-տիկը փառաւորապէս տօնախմբելու համար։ Այդ օրերուն մէջ կը կատարուէր՝ Վրաց համար նշանակալից դիպուած մը, այն է իրենց թագաւորութեան վերջանալը։ Իրաւ այլեւս անուանական դարձած էր Վրաց թա-գաւորութիւնը, Պարսիկ կուսակալներու հարկատու ըլլալու չափ ստորնացած, և ա-նոնց բռնութենէն ազատելու համար ան-պայման Ռուսաց գիրկը ինկած, բայց վեր-ջապէս ազգային քաղաքական իշխանու-թեան ձեւը կը մնար։ Գէորգի և իր որդին Դաւիթ, իրենց կացութեան վրայ յուսա-հատ, Ռուսական միջամտութիւնը ընդու-նած և Ռուսական պաշտպանութիւնը խնդ-րած և հաստատած էին իրենց երկրին ու մայրաքաղաքին մէջ, և անպայման յանձ-նուած էին Ռուսաց ձեռքը։ Գէորգիի վեր-ջին հիւանդութեան օրերը, 1800 դեկտեմ-բեր 22'ին, ստորագրուած էր Վրաստանը Ռուսական մարզ դարձնելու հրովարտակը, և դեկտեմբեր 28'ին կը մեռնէր Գէորգի* (ԱՐՂ. 184)*, և որոշումը գործադրելու պա-տեհը կը ներկայանար* (ՖԱՄ. 30)։ *Փետրուար* 16'*ին, երբ տակաւին Գէորգի չէր թաղ-ուած, Ս. Սիոն մայրեկեղեցւոյն մէջ հրա-տարակուեցաւ Պօղոս կայսեր յիշեալ հրո-վարտակը, և Վրաստան պաշտօնապէս կայ-սերութեան միացուեցաւ, և Ռուսական նա-հանգ դարձաւ։ Նոյն հրովարտակը յաջորդ փետրուար* 17 *կիրակի օրը Հայոց մայրեկե-ղեցւոյն մէջ ալ կարդացուեցաւ, և Յով-սէփ նախագահեց այդ հանդիսութեան* (ԵՐՑ. Ա. 14), *գոհունակ զգացումով և արտա-կարգ ցոյցերով. վասնզի ինքն եղած էր բանակցութեանց միջնորդը, և Ռուսական ձգտումներուն ալ օգնականը։ Վրացիները համոզած էր համակերպիլ Ռուսական հպա-տակութեան* (ԱՐՂ. 185)*, և կայսեր գրելով վստահօրէն յայտարարած էր, թէ իր խոր-հուրդներով տանջուեցան Ռուսաց հանդէպ անհամակիր կղերները և խռովարարները* (ԱՐՂ. 186)։ *Ասկէ ետքը կատարուեցաւ Գէորգիի յուղարկաւորութիւնը Տփղիսէ Մծխիթա, մահուանէն* 55 *օր ետքը, փե-տրուար* 20'*ին, որուն Յովսէփ ալ հանդի-սապէս մասնակցեցաւ Տփղիսի մէջ։ Վրաց թագաւորութեան ջնջուելովը, ջնջուած կ'ըլլար նաև Հայոց թագաւորութեան մը գաղափարը, որուն համար ծրագիր կազ-մուած ըլլալը յիշեցինք* (§ 2200)։ *Որչափ ալ պարզ փափաք մը եղած ըլլար այդ ծրա-գիրը, սակայն նկատողութեան արժանի է, որ նոյն Յովսէփ, որ անոր հեղինակ ե-ղած էր, ինքն էր որ զայն կ'եղծանէր Վրաց թագաւորութեան ջնջուելուն գործակցե-լովը։ Ռուսական քաղաքականութեան ա-ռաջին մտադրութիւնն էր Կովկասի վրայ գերիշխանութեան ձեւով տիրել, ուստի Վրաց նման դիրք մըն ալ Հայոց տալու միտքը յղացուած էր։ Բայց Վրաց դիրքին ջնջուելովը, Հայոց համար եղած միտքն ալ նովին իսկ կը ջնջուէր։*

**2239.** *Յովսէփ Տփղիսէ չմեկնած ու-ղած էր անգամ մըն ալ քաղաքին հռչակա-ւոր ջերմուկներուն մէջ լոգանալ, ուստի Գէորգիի այրին Մարիամ թագուհին հրաւիրեց զայն արքու-նական բաղանիքը, և Յովսէփ հաճութեամբ գնաց փետրուար* 27'*ին, Մեծպահոց չորրորդ չորեքշաբթին, և ջուրը դիւրական գալուն շատ երկար մնաց ջերմուկի աւազանին մէջ։ Բաղանիքէն տուն եկաւ, բայց տունէն ան-միջապէս թագուհիին գնաց շնորհակալու-թիւն յայտնելու և հրաժեշտի ողջոյն տա-լու. այնտեղ թէյ առնելու ալ մնաց, և ուշ ատեն նորէն տուն եկաւ։ Նոյն գիշեր յան-կարծ ուրուեցաւ, սաստիկ այլայլութիւն և տկարութիւն զգաց, անկողին ինկաւ, ու-կից այլեւս չկրցաւ ելլալ։ Բաւական տա-րածուած և մինչև ստուգան մը հաւանու-թիւն գտած կարծիք է, թէ Յովսէփ թա-*

ՅՈՎՍԷՓԻ ՄԱՀԸ

գուհիին մօտ թէյ առնելու առթիւ թունաւորուած ըլլայ (ՄՍՐ. 33)։ Այդ կարծիքին չարժառիթը պէտք է փնտռել այն զգացումին մէջ, զոր ունէր Մարիամ թագուհին, ազգային իշխանութեան ջնջուելուն վրայ ամէնէն աւելի զայրոյթ ու ցաւում զգացող կինը. որ մինչեւ իսկ զինքն Պետրբուրգ տանելու ներկայացող սպան դաւաճանար սպաննելու համարձակեցաւ (ՖԱՄ. 30)։ Նէ կրնար միեւնոյն զգացումով գեղակուր ընել՝ նոյն ջնջումին միջնորդ եղող անձը։ Սակայն հաւանականագոյն է անհիմն նկատել այդ կասկածը, որովհետեւ Յովսէփ տասն օր եւս ապրեցաւ, և բժշկական քննութիւնք թոքատապ ըսին վերահաս հիւանդութիւնը, և հետեւանք բաղանիքի մէջ չափազանց տաքնալուն, և ցուրտ առեն կրկնուած երթեւեկներով տարաժամ մսելուն։ Տկարութիւնը օրէօր ծանրացաւ, բժշկական ջանքեր ապարդիւն մնացին, ինքն ալ զգաց իւր վտանգաւոր և յուսահատ կացութիւնը։ Մարտ 9'ին Մուռնիվլիրապի չաբաթ օրը, վերջին վայրկեանը հասած զգալով, առաւօտուն իրեն մօտ կոչեց աթոռակալ կամ գործակալ Սիմէոն եպիսկոպոսը, խոստովանեցաւ ու հաղորդուեցաւ, և Էջմիածին ղրկուելիք ու իւր ազգականներուն յանձնուելիք՝ իրերուն մասին հրահանգներ տուաւ։ Ժամ 8'ին նորէն կոչեց Սիմէոնը, լեզուն ծանրացեալ էր, ասաց եթէ կը մեռանիմ, իմ մարմին տարէք ի սուրբ Էջմիածին, Սիմէոն կաթողիկոսի գերեզմանին մօտն թաղէք (63 ԿՈՆ. 920)։ Քիչ ետքը մահը հասաւ, և հոգին աւանդեց մարտ 9'ին գիշերուայ մօտ, 10 ժամին (ԵՐՑ. Ա. 16), նոյն գիշերուան մէջ (ԱՐՂ. 225 յորում լուսանայր տասներորդն մարտի (63 ԿՈՆ. 921), որով պէտք կ'ըլլայ մահը նշանակել մարտ 9'էն 10 գիշերը, կէս գիշերին մօտ, մարտ 10'ին չմտած։

**ՅՈՎՍԷՓԻ ԱՐԺԱՆԻՔԸ**

**2240**. Այսպէս վերջացաւ Յովսէփ Արղութեանի կեանքը, իւր բաղձանաց և ձգտմանց և փառաց լրանալու վայրկեանին, առանց կարենալու անոր յագուրդը զգալ, և լիակատար սառցութիւնը վայելել։ Մենք չենք ուզեր Կիւմիւշխանացիին գրգռեալ զգացումներով ըսել, թէ նա մեռաւ ոչ ժամանեալ ի քաղաքն ամաց հետէ քաշքշեցելոյն, և ծըրնութեամբ յաճախակեալ դառնութեան (63 ԿՈՆ. 921), բայց չենք ալ կրնար աննշանակ պատահար մը նկատել, այդ անակնկալ և անսովոր վայրկեաններու մէջ տեղի ունեցած մահը։ Նա տակաւին 58 տարեկան էր, տկարացած և վատացած կազմ չունէր, տարիքով առոյգ և մարմնով առողջ, կրնար իրեն երկարատեւ պաշտօնավարութիւն ալ խոստանալ, և հաւանարար նշանաւոր և արդիւնաւոր գործունէութիւն ալ ունենալ, որուն երաշխաւորութիւն կրնար ընծայել՝ Ռուսատանի առաջնորդութեան 29 տարիներու մէջ ցուցած արդիւնաւորութիւնը։ Նա իրեն համար ազդեցիկ դիրք մը կազմած էր, պաշտօնական և արքունական շրջանակներու մէջ բարձր տեղ մը գրաւած, անձամբ և ընտանեօք յառաջագահ ազնուականութեան բարձրացած, Հայութեան և հայաբնակութեան համար երախտիքներ ընծայած, եկեղեցիներ և վանքեր, և նոյն իսկ նոր Հայաքաղաքներ հաստատած, մեծ բախտի և մեծ հարստութեան տիրացած, և անոնցմով օգտակար և բարեգործ ձեռնարկներ կատարած. մէկ խօսքով հասարակ դասակարգէ վեր անձնաւորութիւն մը դարձած էր, թէ ձիրքերու և թէ արդիւնքներու տեսակէտէն։ Ինչ որ Արղութեանի այդչափ փայլին վրայ ստուերած կրնայ ձգել, իւր անյագ փառասիրութիւնն է. ոչ այն՝ որ լոկ արդիւնաւորութեան վրայ կը հիմնուի, այլ այն՝ որ արտաքին երեւոյթներու և պերճանքներու կը հետապնդէ։ Պատմուած պարագաները կը հաստատեն, որ իւր կաթողիկոսանալուն գաղափարը յղացողը, առաջարկը կազմողը, միջոցները պատրաստողը, արգելքներու դէմ մրցողը, ամէնը հպատակեցնողը, մրցակիցները ճնշողը, գործը յաջողութեան հասցնողը, ինքն եղած է. ինքը գրեթէ միայնակ, թէ Մայրաթոռոյ միաբանութեան, և թէ Տաճկահայ տարրին անհամակրութեան հակառակ։ Եթէ Ռուսահայ տարրը համակիր եղած է, այն ալ իւր ազդեցութեան ոյժովը կազմուած է։ Իւր յաղթանակին մէջ՝ ուղղակի իւր անձնական գործունէութիւնն է որ կը տեսնուի, և ինչ որ ուղղակի իրմէ չէ, անուղղակի իւր դիրքին և ազդեցութեան և ճնշող

*ստիպման հետեւանքն է եղած, որովհետեւ իրեն ընդդիմանալու և յաջողելու անյուսութեան հանդէպ, նպաստաւոր դառնալը աւելի գործնական տեսնուած է։*

ՅՈՎՍԷՓԻ ՆԿԱՐԱԳԻՐԸ

**2241**. *Թերեւս իբրեւ արդարացում կարենայ յառաջ բերուիլ, թէ Յովսէփ իւր կարողութեան և արդիւնաւորութեան գիտակցութեամբ, ինքզինքը առջեւ կը նետէր, որպէսզի իշխանութիւնը ձեռք անցընելով ազգին աւելի օգտակար ըլլար։ Բայց այդ պարագային մէջ ալ, մեր կարծիքով, ներեալ չէ գրեթէ բռնի ինքզինքը առջեւ մղել, այլ պէտք է թողուլ, որ ուրիշները իրեն արդիւնքը տեսնելով զինքը փնտռեն։ Թող որ իւր ազգին և իւր տարրին օգտակար ըլլալու համար, իշխանութիւն և աստիճան էական պայմաններ չեն։ Ամէն ոք որեւէ կացութեան և դիրքի մէջ իրեններուն օգտակար ըլլալու բաց ասպարէզ ունի, և Յովսէփ ինքն ալ՝ պարզ առաջնորդի աստիճանին մէջ կրցաւ այնպիսի արդիւնքներ ցուցնել, զորս թերեւս պիտի չկարենար արդարացնել կաթողիկոսական աթոռին վրայ։ Միւս կողմանէ յայտնի կը նշմարուի Յովսէփի վրայ, ուղիղ փառասիրութեան խառնուած՝ ունայնասիրութեան ձգտում մը։ Կեղծ ազգարանութեամբ ազնուականութեան ձգտումները, արտաքին պերճանքը, արտաքնայարդար չքեղութեանց տենչանքը, ցուցամոլութեան անյագ ծարաւը, յայտնի եղած են իւր կեանքին ամէն պարագաներու մէջ։ Նոյնիսկ կաթողիկոսութիւնը ապահովելէն ետքը, երկար ամիսներով աթոռ երթալու և գործի ձեռնարկելու յապաղելը, արտաքին չքեղութեանց հետապնդութենէն տարբեր պատճառ չէ ունեցած, ինչպէս արդէն ալ դիտեցինք (§ 2235)։ Կարծես թէ աներեւոյթ ձեռք մը եկաւ իւր կեանքին թելը խզել, երբ տակաւին Տփղիսի մէջ արտաքին փառքերու վայելումով կը յագենար, կաթողիկոսական օծմամբ բաղձացեալ դիրքին գագաթնակէտը հասնելու նախօրեակին։ Կը յիշուի որ Էջմիածին ղրկած հրահանգներն ու հրամայած կարգադրութիւններն ալ՝ պերճանաց և չքեղութեանց, հանդիսութեանց և վայելմանց պայմաններուն չուրջը կը դառնային, մինչ աթոռը իմէ կենսական դարմաններ կ'ակնկալէր, (§ 2235)։ Այսչափ ճիգերէ ետք ձգտումներուն լրումը իրեն պակսեցաւ, զի իւր անունը չենք կրնար անցընել կաթողիկոսաց շարքին մէջ, և լոկ ընտրուածները, առանց միւռոնի նուիրագործման և առանց օծումի, կաթողիկոս չենք կրնար հռչակել։ Ինքն այդ պայմանին ալ ականջ չկախելով, կանխեց կաթողիկոս հռչակուիլ, կաթողիկոս ստորագրել, կաթողիկոսական կոնդակներ արձակել, կաթողիկոսական գործունէութիւն յայտարարել, բայց այսչափը մեզի չբաւեր իւր անունը կաթողիկոսաց գաւազանին մէջ արձանագրելու։ Ընտրեալը օծեալ մը չէ, և Օծեալ չեղողը կաթողիկոս չէ, այս է մեր եկեղեցւոյն կանոնը, և Մաշտոցին կանոնական կարգադրութիւնը (ԿԹՂ. 19)։ Ոմանք սովոր են Յովսէփը [illegible] տիտղոսով անուանել (ՊԻԻ. Թ. և ԱՐՂ.)։ Կան նաեւ Յովսէփ Դ անունով ցուցակի անցընողներ, Յովսէփ Սսեցի երէցն ալ շարքի անցընելով (§ 1442), սակայն մենք չենք ուզեր հաստատուն կանոններէն շեղիլ, և ընտրեալ Յովսէփը՝ Յովսէփ կաթողիկոս ճանչնալ, ինչպէս որ նշանուածները՝ պսակուած չենք ընդունիր։*

ՎԵՐԱՀԱՍ ՎՏԱՆԳՆԵՐ

**2242**. *Բայց կ'ընդունինք թէ Յովսէփի մահը նոր աղէտ մը եղաւ ազգին և նոր դժբախտութիւն մը եկեղեցւոյն։ Այսպէս թէ այնպէս, Յովսէփ կաթողիկոսական աթոռի վրայ անարժան կաթողիկոս մը պիտի չըլլար, և որ գլխաւորն է, ազգին մէջ պառակտումները վերջացած, և նոր գրգռութեանց առջեւ առիթները փակուած պիտի ըլլային։ Հազիւ թէ Յովսէփի աչքերը փակուեցան, շփոթութեանց դուռերը բացուեցան։ Կաթողիկոսական աթոռը դատարկ կը մնար, և մրցակիցներ և կողմնակիցներ նորէն ասպարէզ կը գտնէին հանդէս գալ, և ըսենք համարձակ, իրենց ամէն տեսակ՝ մաքուր թէ աղտոտ հնարքները գործածել անխտիր։ Դանիէլեաններ կային արդէն, և ինչպէս յիշեցինք, Յովսէփի ընտրութենէն ետքն ալ յուսահատած չէին, և միայն ընտրութեան Ռուսական պաշտպանութեամբ լրաց-*

եալ գործ դառնալը, և լրացեալ գործին հանդէպ խնդիրները դադարեցնելու համար Յովհաննէսի հնարքը, անոնք լռութեան ստիպած էին։ Կացութիւնը պարզուած կ'ըլլար թերեւս եթէ Յովսէփի մեռնելովը, անոր կողմնակիցներն ալ Դանիէլի կողմը անցնէին, բայց անոնց մէջ կային հակադանիէլեան հոգւով տոգորեալներ, և անձնական նպատակի ծառայողներ։ Յովսէփի անձնանուէր հետեւորդներէն էր Գրիգոր Զաքարեան Աշտարակեցի վարդապետը, անոր աշակերտն ու հաւատարիմ գործիքը, և ամէն գործերուն տեղեակը. այնպէս որ Սիմէոն եպիսկոպոսի յայտնած վերջին կամքին մէջ Յովսէփի ըսած էր. Իմ կոչեցող տեառն Գրիգոր կաթողիկոսին գիտակ է, զի նմանէ ձեռնադրեցայ (63 ԿՈՆ. 920)։ Բայց Գրիգոր իրեն համար աշխատելու հանգամանք չունէր. և այդ դերը վիճակեցաւ Դաւիթին, որ այլեւս Դանիէլի բարեկամութեամբ իրեն պատրիարքութիւնը պատրաստողը չէր (§ 2227)։ Երբոր Դանիէլ վտանգուեցաւ՝ Դաւիթ անկէ բաժնուած էր. երբոր Դանիէլ աքսորուեցաւ՝ Դաւիթ անոր հակառակ դարձած էր (§ 2230). երբոր Յովսէփ Տաճկահայերէ ընտրուեցաւ Դաւիթ թղթատար ըլլալու ալ վիջած էր, անոր պաշտպանութիւնը վայելելու համար։ Իթէ ստոյգ չենք ընդունիր Պէրպէրեանի գրածը, թէ Դաւիթ Յովհաննէսի թելադրութեամբ կաթողիկոսութիւն կ'երազէր (§ 2233). չենք ալ կարծեր որ նորէն Կ-Պոլսոյ պատրիարքութեան սպասէր, որուն անգամ մը ընտրուած էր (§ 2227). զի սկսած էր գոհանալ Կ-Պոլսոյ կամ Զմիւռնիոյ նուիրակութեամբ, որուն համար Յովհաննէս իրեն միջնորդութիւն կը խոստանար (63 ԿՈՆ. 911)։ Բայց Դաւիթ իւր ակնկալածէն լաւագոյն բախտի հանդիպած էր, զի Էջմիածինի մէջ պաշտօն ստացած էր, և Մինաս տեղապահի մահուամբ՝ Էջմիածինի վարիչը դարձած էր (§ 2234)։ Այս կերպով աւելի մօտեցած էր Յովսէփի, անոր մարդը եղած էր, անոր մտերիմներուն սիրելին եղած էր, և Գրիգորի հետ սերտ յարաբերութեան մտած էր։ Մէկ խօսքով Դաւիթ, սկիզբէն խիեր միտքէն անցուցած, բայց չյայտնած ձգտումներուն այս անգամ բնական կերպով մը կը մօտենար, և Յովսէփի պարապ թողած, կամ թէ լեցնել չկրցած աթոռին ժառանգ կը նկատէր ինքզինքը, մանաւանդ որ Մայր աթոռին մէջ ալ առաջնակարգ դիրք կը վայելէր։ Ահա բուն Դաւիթ-Դանիէլեան խնդիրին սկզբնաւորութիւնը, Յովսէփեան հանգամանքէն անկախաբար։

**ՅՈՎՍԷՓԻ ԿՏԱԿԸ**

2243. Դաւիթի հակակիր միտք յայտնողներ, նախ եւ առաջ Էջմիածինի միաբանները եղան, որոնք կանուխէն ալ Տաճկահայերուն ազդարարեր էին Դաւիթն ու Պալասար չընտրել (§ 2223)։ Զորս եպիսկոպոսներ որոնք հրաւիրակ եկած էին Էջմիածինէ, ուղեցին դլուխ կանգնիլ և թաղման պարագաները իրենք կարգադրել և կատարել մարտ 10'ին, Պալատեան կիրակէին, Մուղնու եկեղեցւոյն մէջ. և Յովսէփի մարմինն ալ պատեալ ու պատրաստեալ միաբանն Էջմիածին տանիլ, իւր վերջին կամքին համեմատ Ս. Գայիանէի բակը թաղելու համար (§ 2339)։ Բայց Գրիգոր կանխեց Ռուսական պաշտօնեաներու մօտ եպիսկոպոսները կասկածելի ընել, տիրացաւ մարմնոյն, կարգադրիչ եղաւ յուղարկաւորութեան, և Ռուսական պաշտօնէից բերնով արգելեց փոխադրութիւնն ընել, առանց Մոզդոկ նստող կուսակալին արտօնութեան. և եպիսկոպոսներուն երթալուն ալ արգելք դնել տուաւ, որպէսզի Էջմիածին դառնալով միաբանութիւնը չզօրացնեն (ԵՐՑ. Ա. 17)։ Սակայն եպիսկոպոսներ նայն օր նամակ գրեցին Էջմիածինի միաբանութեան, որ ժողով ընեն, և նորէն ընտրութիւն կատարեն Դանիէլի վրայ։ Դեռ Յովսէփի մահուան վրայ արեւ չէր մտած, և ընտրական խլրտումներ զայրացած էին։ Գրիգոր Աշտարակեցին, արդէն մտերմացած էր Դաւիթի հետ, Դաւիթ ալ համակերպած էր Յովսէփի տեսութեանց հետ, և այս կերպով Դաւիթի ընտրելիութեան ծրագիրը կազմուեցաւ երկուքին միջեւ։ Մէկը Տփղիսի մէջ և միւսը Երեւանի մէջ գործելու սկսան, աւելի արտաքին և բռնական ոյժերուն վրայ կրթնելով, քան թէ ներքին ընտրութիւնը շահելու միջոցով։ Գրիգոր Տփղիսի մէջ լուր տարածեց թէ Յովսէփ կտակ ըրած է Էջ-

միածինի Դաւիթը կամ Կ-Պոլսոյ Յովհաննէսը կաթողիկոս նստեցնել, ինչ որ հիմնովին սուտ էր։ Անմիջապէս Սիմէոն եպիսկոպոս, որ Յովսէփի վերջին կամքերը լսող և ընդունող միակ անձն էր. այդ մասին գրաւոր յայտարարութիւն հրատարակեց, մարտ 12 թուականով, որուն մէջ այս տեսակ ակնարկ բնաւ չկար (63 ԿՌՆ. 920)։ Բայց Գրիգոր տիրացած էր Յովսէփի բոլոր ինչքերուն և դրամներուն, որոնք նշանաւոր գումար կը կազմէին, և զորս նա միատեղ առած էր Էջմիածնայ մէջ դիւրակեաց կեանք պատրաստելու և մեծագործութեան արդիւնք ալ ցուցնելու համար։ Գրիգոր այդ գումարներով յաջողեցաւ համամիտներ շահիլ, բայց աւելի զօրաւոր փաստ եղաւ քաղաքական տեսակէտը։ Յովսէփի ռուսասիրութիւնը յայտնի, և Գրիգոր ալ անոր սրտակիցն ըլլալով, վերջինիս վկայութիւնները անպայման կերպով ընդունելի էին Ռուսական պաշտօնէութեան առջեւ։ Արդ Գրիգոր կը վկայէր, թէ Դաւիթ միակն էր որ Յովսէփի ուղղութիւնը կրնար շարունակել, և Ռուսական ազդեցութիւնը տարածել Հայկական գաւառներու մէջ. և թէ Դանիէլ Ռուսական ազդեցութեան յայտնի հակառակորդ մըն էր, և Պարսկական ու Տաճկական ազդեցութեանց ներքեւ կը գործէր։ Ռուսներուն դիւրին էր հաւատցնել թէ պէտք էր ամէն միջոցներով պաշտպանել Դաւիթը։ Ցիշենք անցողաբար թէ Ռուսաց Պօղոս կայսրը, Յովսէփի պաշտպանը, դաւաճանութեամբ կը սպանուէր 1801 մարտ 11էն 12 գիշերը (ՇՕԲ. 400), Յովսէփէ 3 օր ետքը, և կը յաջորդէր որդին Աղեքսանդր Ա, բայց հաւանաբար Տփղիսի մէջ լուրը չէր հասած, և Պօղոսի ազդեցութիւնն էր որ կը տիրէր։

**ԴԱՆԻԷԼԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆԸ**

**2244**. Գրիգոր օգուտ կը քաղէր նաեւ միաբանութեան բրածէն, որ Յովսէփի մահուան լուրը և չորս եպիսկոպոսներուն նամակը առնելով, ժողովի գումարուեցաւ մարտ 16՚ին (ԴԻԻ. Ա. 86), Ղազարու յարութեան շաբաթ օրը, և համամիտ համաձայնութեամբ կրկին անգամ Դանիէլի ընտրութիւնը հռչակեց, որ նախապէս ալ՝ միաբանութեան առաջին ընտրելին եղած էր (§ 2219)։ Ժողովին համաձայնութեան դէմ դիտողութիւն ընողը միայն Դաւիթ եղաւ, պատճառ դնելով թէ առանց Երեւանի մեծամեծներուն օրէն չէ ընտրութիւն կատարել։ Բայց իրեն պատասխանուեցաւ թէ եղածը նոր ընտրութիւն չէ, այլ առաջին ընտրութեան կրրկնումը կամ վերանորոգումն է, որուն այն ատեն աշխարհական տարրը համաձայնեցաւ, ինքն Դաւիթ ալ ամէնուն կողմէն պատգամաւոր գնաց, և նոյն միտքով աշխատեցաւ, Տաճկահայերն ալ Դանիէլի ընտրութիւնը հռչակեցին, որով նոր դիմումի հարկ չմնար։ Ասով մէկաեղ խնդիրի տեղի չթողլու համար, ութը եպիսկոպոսներ, Դաւիթն ալ միատեղ, Երեւան կու գան, մեծամեծները կը հաւաքուին ի Ներսիսեան խանին խոն, որ էր միշտ Ղուկասի օրէն յիշուած Մահմատը, ամէնքն ալ համամիտ կը գտնուին Դանիէլի ընտրութեան, և պաշտօնական հանրագրութիւնը կը պատրաստուի, և մարտ 20, աւագ չորեքշաբթի օրուան թուականով կը կնքուի 78 միաբաններէ և 41 իշխաններէ (ՄՍՐ. 37), և շուտով Դանիէլի հասցնելու համար պատգամաւորներ կը նշանակուին Յովհաննէս Պառաւեան և Ներսէս Աշտարակեցի վարդապետները, դոյմանաս փոխանակ ասոր միջոցի՝ ընտրեալը Էջմիածին բերելու։ Դաւիթ՝ որ ներքին ընտրութեամբ օգտուելէ յոյսը կտրած էր, անհակառակ հանրագրութիւնը կը ստորագրէ, և յատուկ նամակ ալ կը գրէ Աստուծմէ ընտրեցելոյն և կոչեցելոյն, յորդորէին ըլլալով որ հրամայէ և Էջմիածին գայ՝ է միաբանութեան և հնազանդութեան միաբանիցս, և յարգանութեան Դաւթի Նորոգ եպիսկոպոսի։ Դաւիթ Յովսէփի մահն ալ իբրեւ նախախնամական պատահար մը ընդունիլ կը ցուցնէ, երբոր կը գրէ, Աստուած է որ յաջողէ զամենայն, և ո՞վ է որ Աստուծոյ կամացն կայցէ հակառակ (ԴԻԻ. Ա. 86-88)։

**ԴԱՒԻԹԻ ՃԻԳԵՐԸ**

**2245**. Բայց Դաւիթ անկեղծ չէր այդ յայտարարութեանց մէջ. նա արտաքնապէս համակերպելով կ՚ուզէր միաբանները քնացնել, որպէսզի ուրիշ ձեռնարկներու պէտք չզգան. զի ինչպէս գրեցինք, Գրիգոր-Դաւիթեան ծրա-

*գիրը, ուղղակի արտաքին ճնշումի և բռնութեան վրայ հիմնուած էր։ Այդ միտքով կ'աշխատէր Գրիգոր Տփղիսի մէջ, իրեն կողմը ունենալով Ռուսական տիրապետութեան ներկայացուցիչները, զօրավար Լազարեվը, դեսպան Կաւալիցկին, և կուսակալ Կնօրինը, որոնք այլևս համոզուած էին թէ իրենց պետական չահր բացարձակապէս կը պահանջէ Դաւիթի կաթողիկոսութիւնը, որպէսզի Էջմիածինի միաբանութեան հակառս կարծուած ուղղութիւնը փոխուի։ Այդ միտքով Տփղիսէն պատգամաւորութիւն մը ղրկուեցաւ Երեւան, զօրավար Լազարեվի, և Վրաց անժառանգեալ թագաժառանգ Դաւիթի անունով, և Յովսէփեան կողմնակից Տփղիսեցի մեծամեծներու յանձնարարութեամբ, որպէսզի մէկ կողմէն միաբանութիւնը հաճեցնէ Դաւիթի կաթողիկոսանալուն, իսկ միւս կողմէն Մահմատ խանը բռնադատէ, և Յովսէփէ մնացած գանձերուն փաստով համոզէ, որպէսզի բոլոր իր իշխանութեամբ միջամտէ և Դաւիթը կաթողիկոսութեան աթոռին վրայ հաստատէ։ Մահմատ նախապէս իր ներկայութեամբ Դանիէլի ընտրութիւնը հաստատած էր, և յատուկ գրութեամբ ալ զայն հրաւիրած էր, որովհետեւ զայն իրեն կողմնակից կը ճանչնար. բայց Տփղիսէ եկողներ, և Ռուսական քաղաքականութեան գործիք եղողներ, Մահմատի միտքը կը պղտորեն, թէ Ներսէս վարդապետ* [illegible] *(ԴԻՒ. Ը. ժղ)։ Այսպէս ռուսասէրներ հակառուսականութիւն կը կեղծեն, խարդաւանանքի գագաթնակէտը հասնելով։ Այսպէս թէ այնպէս Տփղիսէ եկող պատգամաւորութեան թելադրութիւնները կամ յանձնարարութիւնները, և մանաւանդ առատաձեռն կաշառքը, Մահմատի միտքէն կը ջնջէին նախընթացաբար ըրածը, և զինքը Դաւիթի համար բուռն գործիչ մը կը դարձնէին։ Մահմատ իր կողմէն ալ յանձնարարութիւններ կը սկսէր ընել միաբաներուն, որուն սոքա կը պատասխանեն, թէ իրենք ուխտ ըրած են, և Ս. Գեղարդի վրայ երդումով Դանիէլի ընտրութիւնը հաստատած են, և չեն կրնար անկէ ետ դառնալ (ԴԻՒ. Ա. 89), և թէ ընտրեալը ճամբու վրայ է, և մօտ օրէն կը հասնի, պայմանադրեալ 60 օրերուն մէջ։ Յիշենք անցողակի, որ դեռ Յովսէփ Տփղիս չհասած, Յովհաննէս Գեղարդակիր եպիսկոպոսը կրցած էր Ս. Գեղարդը գաղտնի կերպով Տփղիսէ հանել, և անձայն անշշուկ Էջմիածին հասցնել։ Միաբանութիւնն ալ Մայրտաճարի մէջ հաւաքուելով և Ս. Գեղարդը մէջտեղ դնելով կատարած էր Դանիէլի ընտրութիւնը (ԴԻՒ. Ա. 88)։*

**2246**. *Դանիէլի մասին չխօսեցանք 1800 նոյեմբեր 13'էն Պանտրմայէ մեկնելէն ետքը (§ 2237)։ Նա Պանտրմայէ ետքը Մահալըճի մէջ դադարած էր տեղացւոց հիւրասիրութիւնը վայելելով, և այնտեղէն իր յարաբերութիւնները ընդարձակելով, որ կրնար կասկած տալ նոր խլրտումներու, թէ ոչ իրմէ, գոնէ իր չուրջը գտնուողներէն, որոց յախուռն գործունէութիւնը յայտնի էր։ Այս պատճառով Յովհաննէս իրեն լուր կը հասցնէ, որ չատ չերկնցնէ ուղեւորութիւնը, և օր առաջ Եւդոկիա հասնի, վասնզի* [illegible]*, այսինքն է բռնադատեալ կերպով.* [illegible]*, այսինքն կերպով մը երաշխաւոր կանգնեցանք. ուստի լաւ կը լինի առանց չդեգերիլ,* [illegible]*, որ տեղի կ'ունենար եթէ զինուորական հրամանով տարուէր (63 ԿՈՆ. 916)։ Կիւմիւշխանացին, իր բորբոքեալ երեւակայութեամբ, Յովհաննէսի կողմէ դաւաճանութեան գործ մը կը կարծէ տեսնել այդ ազդարարութեան մէջ, Յովհաննէսի և Աղայեկեանի և Թամարովի ձեռքով լարուած, որուն առջեւը կ'առնուի Մուրատ Սուրէնեանի ձեռքով, որ կառավարութենէն արտօնութիւն կը ստանայ, որպէսզի Դանիէլ* [illegible] *երթայ Եւդոկիա։ Մենք կը կարծենք որ եթէ իրօք պատրիարք և Թամարով գործին մէջն էին, Մուրատ Սուրէնեան մը չէր կրնար անոնց հետ կչռուիլ։ Ուստի Յովհաննէսի ազդարարութիւնը, որով ոչ նոր հրամանի մը, այլ կանխորոշ հրահանգի կ'ակնարկուի, պարզ զգուշաւորութիւն մըն էր, Դանիէլ-*

ԴԱՆԻԷԼ ՅԵՒԴՈԿԻԱ

*ևանց նոր խլրտումին առիթ չտալու համար։ Այդ անցուդարձերու միջոցին Դանիէլ Մահալըճ կը մնայ նոյեմբեր 13'էն մինչեւ դեկտեմբերի վերջերը, և 1801 յունուար 5'ին կը հասնի Պոլիս։ Կիւմիւշխանացին բաւարար բացատրութիւն մը չտար մեզի, Դանիէլի 50 օր Մահալըճ մնալուն վրայ, ինչ որ մեր կարծեօք աւելի Յովհաննէսը կ'արդարացնէ, և ոչ թէ անոր վրայ դաւանութեան մասին կը հաստատէ։ Յովհաննէսի համար կաթողիկոսութեան խնդիրը փակուած էր Յովսէփի հաստատութեամբ, և այլեւս Դանիէլեան համակրութիւնք անօգուտ և վնասակար էր։ Դանիէլ Ծնունդի տօնը Պոլսու կատարելով, Առաջաւորաց բարեկենդանին, այսինքն 1801 յունուար 13'ին կը գտնուի Թօսիա, 19'ին Ս. Յովհաննու Կարապետի տօնը կը կատարէ Ամասիա, և 22'ին, երեքշաբթի, Սուփիստնց տօնին կը մտնէ Եւդոկիա՝ իրեն նպատակակէտը (63 ԿՈՆ. 916), երբ տակաւին Յովսէփ Մողդոկէ Տփղիս ուղեւորութեան մէջ կը գտնուէր (§ 2237)։ Եւդոկիա հասնելով փառաւոր ընդունելութիւն ունեցաւ Դանիէլ քաղաքացւոց կողմէն, բայց ինքն չուզեց պաշտօնապէս առաջնորդական դեր ստանձնել, իբրեւ կը դժուարանար և կը խրտչէր, կամ աւելի ճիշդ իրենները զինքը կը խրտչեցնէին, իբրեւ առաջնորդ թեմին՝ Յովհաննէս պատրիարքին որդէս սպասաւոր լինել (63 ԿՈՆ. 915)։ Դանիէլ ըստ բնածին չարութեան իւրոց, ինչ որ անպայման մենք ալ կ'ընդունինք Դանիէլի վրայ, կը սպասէր որ Յովսէփ օծանել ցուցանէ զաղօթս կամակորութեան իւրոյ, որպէս զի ինքն ալ Էջմիածին քաշուի, չոր և թաց հասարակ վարդապետական պաշտօնէ (63 ԿՈՆ. 916)։*

**2247**. *Բայց գործերը այլապէս կերպարանեցան, և երբ Դանիէլ հանդարտ կը մնար Եւդոկիա, անդին Տփղիսի մէջ կը վերջանար Յովսէփի կեանքը, և Դանիէլի միւսին գործադրութիւնը*

**ԴԱՒԻԹԻ ԸՆԹԱՑՔԸ**

*իւր հիմնական պայմանը կը կորսնցնէր։ Մայրաթոռոյ միաբանութիւնը մարտ 16'ին ընտրութիւնը կատարած, և մարտ 20'ին պարտուպատշաճ պաշտօնագիրը պատրաստած, խկոյն ճամբայ հանած էր Յովհաննէս Պառաւեան և Ներսէս Աշտարակեցի վարդապետները, որպէսզի 60 օրերու միջոցը չանցած, այսինքն մայիս 16'էն առաջ, Դանիէլը Եւդոկիայէ Էջմիածին հասցնեն (ԴԻՒ. Ա. 88)։ Երբոր Մահմատ Դաւիթի համար ստիպումները կը խստացնէ, միաբաններ իրենց ընտրութիւնը փոխելու անհնարութիւնը կը զգացնեն (§ 2245). իսկ միւս կողմէն ալ միջոցներ կը խորհին որ օր առաջ գործը լրացեալ վիճակի մէջ դնեն, և հետապնդութիւններուն առջեւն առնեն։ Կը սկսին վանքին մէջ մասնաւոր խորհրդակցութիւններ կատարել, Դաւիթէ գաղտնի, յարմար միջոցներ կարգադրելու համար։ Մահմատ կը նայի կերպով մը երկու կողմերն ալ չահիլ՝ որ երկու կողմերէ ալ շահուի, և միաբանները կը յորդորէ, որպէսզի ջանան պայմանադրեալ 60 օրերը չանցած իրենց ընտրեալը հասցնել։ Այդ խորհուրդներու ատեն, օր մը միաբաններուն Աստուածատուր եպիսկոպոսի սենեակը հաւաքուած ատեննին, Դաւիթ յանկարծ վրայ կը հասնի, և կը սկսի գանգատիլ, ընդէ՞ր և ոչ ինչ առնէք ինձ յայտնելով. որուն խրատիւ կը պատասխանէ Յովհաննէս Գեղարդակիրը. Ո՞չ ով ես դու, որ հարկաւ լսել տալու պարտաւորութիւնք։ Դաւիթ մինչեւ այն ատեն երկերես ընթացք կը պահէր, արտաքուստ միաբանութեան համակարծիք երեւնալով, և ձեռքի տակէն իրեն նպատակին հետեւելով։ Բայց Մահմատէ եկած աղդարարութիւնը, ամէն բան պարզած էր միաբաններուն առջեւ, և անոր հետեւանքն էր Յովհաննէսի պատասխանը։ Դաւիթ ալ զգալով, որ իւր գաղտնիքը յայտնուած է, բուռն զայրացմամբ կը պատասխանէ. Տէրէք զինչ առնել առնել, և գիտասջիք եթէ որդւոյ ով եմ ես։ Միաբաններ գործը չապեցնելու պէտքը տեսնելով, անմիջապէս նոր պատուիրակներ կ'որոշեն, Ղազար խոստովանահայր և Ստեփաննոս Բուշուրեան եպիսկոպոսները, և անմիջապէս ճամբայ կը հանեն ապրիլ 10'ին։ Առաջին հրաւիրակները ապրիլ 7'ին կը հասնէին Եւդոկիա, և Էջմիածինի Նուիրակ Գրիգոր Խամսեցի եպիսկոպոսէն ալ օգնութիւն գտնելով, հապճեպ պատրաստութեամբ ճամբայ կը հանէին Դանիէլը ապրիլ 11'ին, Աշխարհամատրան հինգշաբթին, և Կ-Պոլիս ալ բոլոր եղելութիւնները հաղոր-*

գելով, կը յանձնարարէին ֆռանկ հանել ընդհանրական հայրապետութեան Ներսէն (ԴԻՒ. Ա. 90)։ Բայց միաբանութեան բրած կարգադրութիւնները, և անոնց վրայ դրած յոյսերը պարապի ելան, երբ աւելի ջանքերնին կը չատցնէին, որպէսզի յաջողին արգելել Դաւիթի ոտնձգութիւնները, և աթոռը վտանգէ ազատել։

---

# Տ. ԴԱՒԻԹ Ե. ԷՆԷՉԳԷԹՑԻ

**ԴԱՒԻԹԻ ՕԾՈՒԻԼԸ**

**2248.** Դաւիթ՝ միաբանութեան իրեն համամիտ չլինելուն զայրացած, ինքզինքը անոնց հասկցնելու սպառնալիքը ընելէն ետքը (§ 2247), միտքին մէջ հաստատեց որեւէ կերպով կաթողիկոսութեան տիրանալ, օգտուելով Մահմատի իրեն կողմը դարձած ըլլալուն պարագայէն, և գործածելով անոր բռնական իշխանութիւնը։ Արդէն այս միտքը հաղորդած էր Տփղիս՝ Գրիգոր Աքքիրմանցիին, որպէսզի պէտք եղածը ընէ, և գլխաւորապէս Մահմատը հաճեցնելու նիւթական և հնչուն փաստերը հասցնէ։ Ինքն ալ Էջմիածինէ Երեւան եկաւ՝ անձամբ բանակցելու համար Մահմատի հետ, և անոր մօտ ամէն տեսակ միջոցներ գործածելու համար։ Ինչպէս կը տեսնուի, կանոնական միջոցներուն չէր վստահեր այլեւս, միաբանութիւնը չահիլ չէր յուսար, ոչ ալ վստահ էր որեւէ ընտրական ձեւ մը կատարել, կամ թէ ճրնշողական միջոցներով կանոնական պահանջը առերես լրացնել. այլ միտքը դրաւ բացարձակապէս Մահմատի բռնական իշխանութեամբը զօրանալ։ Մահմատ, որչափ ալ հնչուն փաստերով համոզուելու պատրաստ, տակաւին կ՚ուզէր յարգել միաբաններուն հետ հաստատած համաձայնութիւնը, և պահել Դանիէլի համնելուն համար տրուած 60 օրերու պայմանաժամը, որ կը լրանար մայիսի կէսին, և որուն գրեթէ ամիս մը ատեն կար տակաւին։ Դաւիթ կը զգայ, որ պէտք է բոլոր ճարտարութիւնը ձեռք առնել, այդ դժուարութեան ալ յաղթելու, և Մահմատը հաճեցնելու, որ իրեն զինուորական ոյժ տայ, ինքն ստանձնելով մնացածը լրացնել և միաբանութիւնը բռնադատել։ Տեղ մը յիշուած կը գտնենք թէ Դաւիթ օգտուեցաւ նաեւ միջնորդութեամբ նոյն Մահմատի (ՄՍՐ. 39), որ եթէ ստոյգ է, կը ցուցնէ թէ մինչեւ ուր հասած են Դաւիթի հնարիմացութիւնները։ Նոյն օրեր Երեւան հասաւ Աքքիրմանցին ալ՝ Ցովսէփի մարմինը Տփղիսէ բերելով, Ս. Գայիանէի մէջ թաղելու համար (ՄՍՐ. 39)։ Ինչ որ տեղի ունեցաւ յետոյ յունիս 8՚ին (63 ԿՈՆ. 924)։ Երկուքին ջանքերը Մահմատի վրայ կը զօրանան, և Դաւիթ Երեւանէ Էջմիածին կը դառնայ, Պարսիկ պաշտօնեաներու և զօրականներու հետ։ Անոնց ձեռքով ամէն տեսակ բռնութիւն կը գործածուի միաբաններու վրայ, մինչեւ որ եպիսկոպոսները ֆռանկ և խաչափառ կը բռնադատուին (ԴԻՒ. Ե. 117), 60 օրերու պայմանաժամին լրանալէն 20 օր առաջ, ապրիլ 28՚ին, Ցինանց վեցերորդ կիրակիին, օծման կարգը կատարել Դաւիթի վրայ, որ այս կերպով կաթողիկոս կը հռչակուի և Մայրաթոռին կը տիրանայ։ Նոյն օր սկիզբ կը տրուի այն տխուր երկպառակութեանց և ներհակընդդէմ հակառակութեանց, որոնք այնչափ տարիներ տեւեցին, կիրքերու ասպարէզ բացին, անտեղի գործեր գրգռեցին, և կ՚արժէ որ մտադրութեամբ զննենք այդ եղելութեանց իսկութիւնը, և Դաւիթ-Դանիէլեան խնդիրը իւր իսկութեան մէջ ներկայացնենք։

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ՏԵՍԱԿԷՏԸ**

**2249.** Ամէն անոնք որոնք այդ մասին կը գրեն, համամիտ են յայտարարել, թէ Դաւիթի կաթողիկոսութիւնը կանոնական ընտրութեամբ չեղաւ։ Միաբանութիւնը՝ Երեւանի մեծամեծներու ձայնակցութեամբ, Դանիէլը ընտրած էր, և իւր ընտրութեան վրայ կը պնդէր. Կ-Պոլսոյ պատրիարքարանը և ժո-

*ղովը՝ ընտրութիւն կատարելու առիթ չէր ունեցած, իսկ Տփղիսի մէջ Դաւիթին համար աշխատողներ, միայն փափաքներ յայտնած էին և հնարքներ գործածեցին, իսկ կանոնական ընտրութիւն չըրին, զի ընելու իրաւունք ալ չունէին։ Իսկ Ռուսական պաշտօնէութիւնը և Երեւանի խանութիւնը Հայոց կաթողիկոսութեան օրինական ընտրողները չէին։ Ցայտնի է ուրեմն որ Դաւիթի կաթողիկոսութիւնը ապրիլ 28'ի օծումէն առաջ, բնաւ կանոնական պայմաններ չունեցաւ, ըլլայ իսկ առերեւս կամ բռնադատեալ ձեւի տակ։ Իսկ օծումը՝ արտաքին բռնութեան ներքեւ կատարուած գործողութիւն մը եղաւ, ամէն գրողներու համաձայնութեամբ։ Ասոնց վկայութեան համեմատ, Դաւիթ օծուած է՝ զօրացեալ բռնան զօրութեամբ խանին Երեւանայ, և անգոյացեալ զմիաբանս այլովքն ընտրութ. (ԴԻԻ. Ա. 93), կամ բռնացեալ ի վերայ միաբանից յեռանդատուութեամբ խանին Երեւանայ (ՇԱՀ. Ա. 232)։ Դաւիթ կաթողիկոսացած է գտնելով պարէնս և ոսկին յաջողեալ՝ յորում արծաթով զկամս Պարսից իշխանին Երեւանայ (ՄՍՐ. 39), և կաշառուած խանին զօրքերը և զօրապետները Էջմիածին բերել տալով (ԵՐՑ. Ա. 19). մէկ խօսքով, ոչ օրինօք, այլ խանի զօրքերի պաշտպանութեամբ (ՁԱՄ. Բ. 146)։ Այս պարագաները հետազօտելով և քննելով վերջէն վերջ Աղեքսանդր կայսրն ալ համոզուած է, թէ Դաւիթի կաթողիկոս օծուիլը, որը կատարուել է բռնութեամբ և Երեւանի խանի ջանքերով (ԵՐՑ. Ա. 20)։*

**2250.** *Դաւիթի ըրածին պաշտպան մը գտնուած է վերջին ատեններ (ԴԻԻ. Ե. ժե), որ ինչ ինչ պարագաներ ալ յառաջ կը բերէ անոր անկանոն օծումը արդարացնելու, գոնէ գեղեբեսելու համար։ Կ'ըսուի թէ Էջմիածին Պարսիկ հրոսակներով շրջապատուած էր, թէ վանքը Պարսիկ զինուորներով լեցուն էր, թէ վանքը կողոպտուած և քանի մը հազար դահեկանի կարօտը կը քաշէր, որոնք իբր թէ հապճեպ օծումը կ'արդարացնէին։ Սակայն այդ իրողութիւնք 1801 ապրիլին չեն պատկանիր, ինչպէս պատմական պարագաներն ալ ցուցուցին, և ինքն Դաւիթ*

ԶՔՄԵՂԱՆՔԻ ԿԷՏԵՐ

*ալ կ'ըսէ թէ Էջմիածնի վանականները եղած են ի խաղալ զօրացն Պարսից յերկիւղ յանգելով (ԴԻԻ. Զ. 37). և աւելի որոշակի ալ կը գրէ, թէ տեղի ունեցած են ի հերձուածողէ, ի յարուցման զօրացն Պարսից, և յաւէտ եւս ի Շահ կուրցեալն յայսկոյս գալուն (ԴԻԻ. Զ. 33), որով կ'ակնարկէ Խաճար Մահմատի արշաւանքներուն, զորս պատմած ենք իւր կարգին (§ 2202), և որ 15 տարի առաջ տեղի ունեցան։ Կը յիշուի նաեւ Դանիէլի պայմանեալ ատենին չգալը, սակայն պայմանաժամը 60 օր էր, իսկ ապրիլ 10'ի Երեւանի խանին նոր պնդումէն հաշուելով՝ ամիս մըն էր, հետեւաբար ապրիլ 28'ին պայմանաժամը լրացած չէր, և մինչեւ մայիսի կէսը Դանիէլ կրնար հասնիլ Էջմիածին, ինչպէս մայիս 14'ին հասաւ Պայազիտ, ուղեւորութիւնը դանդաղեցնէն ետքը (ԴԻԻ. Ա. 91)։ Ըսուած է նաեւ թէ Դանիէլէ բնաւ լուր չկար, իսկ այդ ծանօթութիւնը գրողը Հաճի Բաբա է, որուն նամակը գրուած է Կարինէ մայիս 1'ին (ԴԻԻ. Ե. 99), մինչ օծումը կատարուած էր ապրիլ 28'ին, և նամակը հազիւ մայիս 10'ին կրնար Էջմիածին հասնիլ։ Կը կրկնուի ու կը կրկնուի Յովսէփի կտակը, որ ստուգութիւն չունի, և Գրիգորի մէկ կեղծիքն է, ինչպէս յիշեցինք (§ 2243), և նոյն իսկ Աղեքսանդր կայսր ալ վերջէն համոզուեցաւ, որ Յովսէփի կտակը, որի վրայ սկզբում հիմնուած էր Դաւիթի ընտրութիւնը, ի մօտոյ քննելով պարզուեց, որ ամենեւին չէ եղած (ԵՐՑ. Ա 20)։ Բայց եթէ եղած ալ ըլլար, կաթողիկոսի մը կտակը, առանց կանոնական ընտրութեան, իրաւունք մը չստեղծեր։ Իսկ այն թէ միաբանութիւնը տալիս էր իւր համաձայնութիւնը Դաւիթին կաթողիկոս ճանաչել (ԴԻԻ. Է. ժը), նախընթացաբար տրուած ընտրողական հաւանութիւն չէ։ Դաւիթ ալ իւր օծումէն ետքը մայիսի մէջ ամէն կողմ գրած քանի չափ նամակներուն մէջ (ԴԻԻ. Զ. 1-36), որ միեւնոյն ոճով գրուած են, միշտ առաջ յիշուած է օծումը, և անկէ ետքը՝ միաբանք որչափ գոհ են և ժողովրդական երկիրս զհամաձայնի նորոյն տեսցեն (ԴԻԻ. Զ. 2), միշտ նախ ապրիլ 28'ի գործողութիւնը, և յետոյ ինքեանք իսկ մահուրեք ծանուցին՝ տեղեկութիւնը (ԴԻԻ. Զ. 10)։ Ցիշատակագիրը յայտնապէս ալ կը գրէ, թէ զինի օծութեան*

Դաւիթ պատրաստել կու տայ հանրագրութիւնները, և յոլովայս կնքեցուցանէ մեծամեծս (ԴԻԻ. Ա. 95), և թէ էր երէց քահանայնեամբ՝ մեծամեծաց (ՄՍՐ. 42)։ Հետեւաբար օրինաւորութեան և կանոնականութեան, ոչ խսկ արտաքնայարդար ձեւը պահուած է Դաւիթի կաթողիկոսանալուն գործողութեան մէջ, և յայտնի բռնութեան և յափշտակութեան հետեւանք եղած է անոր օծումն ու գահակալութիւնը։

2251. Այդ ըլլալով հանդերձ պատմական պարագաներէն մեր քաղած եզրակացութիւնը, զարմանք պէտք չէ չարժէ, եթէ մենք անոր անունը օրինաւոր կաթողիկոսաց շարքը կը դասենք, և անոր անունով կը մակագրենք այդ տարիներուն պատմութիւնը։

**ԳՈՐԾՆԱԿԱՆ ՏԵՍԱԿԷՏԸ**

Նախապէս դիտել կու տանք, թէ Դաւիթի օծուած օրը ուրիշ օրինաւոր կաթողիկոս չկար, որուն հակառակաթոռ նկատուէր Դաւիթ, զի Դանիէլի ընտրութիւնն ալ լրացած և վաւերացում ստացած չէր։ Առաջին ընտրութիւնը արդէն ոչնչացած էր Յովսէփի ընտրուելովը և ընդունուելովը, իսկ երկրորդը՝ միաբանութեան կողմէն կատարուած, պէտք էր Կ-Պոլսոյ պատրիարքութեան և ժողովուրդին կողմանէ ալ հաստատուէր, և այս կամ այն կառավարութեան կողմէն վաւերացուէր, և ըստ այնմ ալ ծիսական օծումը կատարուէր։ Արդ այս պայմանները կատարուած չէին, որով Դանիէլ լոկ ներկայուած էր, բայց հաստատուած, օծուած և աթոռ նստած կաթողիկոս չէր։ Այս պարագաներ իրաւունք կու տան ըսելու, թէ դեռ տրամադրելի էր կաթողիկոսական աթոռը։ Դաւիթ յաջողեցաւ զայն ձեռք անցընել, և անոր վրայ հաստատուիլ իրապէս, թէ ոչ իրաւապէս, և իւր իրական կաթողիկոսութիւնը, որ արդէն իրեն համակիր հոսանք մը ունէր Երեւանի և Տփղիսի մէջ, վերջապէս միաբանութենէն ալ գործնականապէս ընդունուեցաւ, և հարկ չենք սեպեր այլեւս ընդունելուն ինչպէս պարագաներ, բաւական սեպելով որ իրապէս ընդունուեցաւ։ Կ-Պոլսոյ պատրիարքութիւնն ալ եկաւ յարեցաւ այդ ընդունելութեան, և Դաւիթը կաթողիկոս ճանչցաւ, յիշատակութիւնը սկսաւ, և Օսմանեան կառավարութենէ հրովարտակն ալ խնդրեց և առաւ։ Արդէն տեղական Պարսիկ կառավարութիւնը կամակից գտնուած էր, բռնութեան գործակից ըլլալով իսկ։ Ըստ այսմ կրնանք ըսել, թէ այս ալ այն բացառիկ պատահարներէն մէկն է, երբ որեւէ գործողութիւն մը, որ ապօրինի կերպով կը սկսի, հանգամանքներուն փոփոխուելովը ու ատեն անցնելով, կը հաստատուի, կ'ընդունուի, և կերպով մը կ'օրինաւորանայ։ Եթէ չուզէինք այդ եզրակացութիւնը ընդունիլ, պարտաւորեալ պիտի ըլլայինք, Հայոց եկեղեցին վեց տարի, անգլխութեան և անհաստատութեան վիճակի մէջ դնել, եղած գործողութիւնները անվաւեր և ձեռնադրութիւնները ապօրինի ըսել, և խառնակ ու շփոթ կացութիւն մը կազմել։ Ասով չենք ուզեր ոչ Դաւիթը արդարացնել, և ոչ եղելութիւնը կանոնական կարծել տալ, միայն իրական կացութիւն մը կազմել, իրաւականութիւնը զարմանելով։

2252. Դաւիթի անձին վրայ խօսելով, պէտք է ճանչնանք անոր վրայ կարողութեան և գործունէութեան և ճարտարութեան արժանիքը, որ եթէ նենգութեան և բռնութեան խառնուրդով խանգարուած չըլլար, պատմութեան մէջ նշանաւոր անձնաւորութիւն մը պատկերացնելու հանգամանքները վայելած կ'ըլլար։

**ԴԱՒԻԹԻ ԱՆՁԸ**

Մենք զինքը գործի վրայ տեսանք Ղուկասի մահուան վայրկենէն սկսելով, դժուարին պարագաներէն ճարտարութեամբ դուրս ելլալն ու յիշեցինք, միայն թէ շարունակ գոյն ու կերպ փոխելով, մէկէն միւս ուղղութիւնը կ'անցնէր վայրկենական առումներով, միակ նպատակ ունենալով իւր անձը և իւր բարձրացումը։ Այդ մասին Յովսէփի զգացումներուն հետ համաձայն էր, բայց չունեցաւ Յովսէփի հնարիմաց հանդարտութիւնը, և փոխանակ անոր պէս տարիները իրեն նպաստաւոր ընելով բարձրանալու, և ամէնուն կամքով յառաջ անցնելու, պարտաւորուեցաւ յափշտակութեան դիմելու, և զէնքով ու բռնութեամբ աթոռին տիրանալու, և ահով ու սարսափով զայն պահպանելու, մինչեւ որ ստիպուե-

ցաւ ունեցածը ձեռքէ հանել՝ նոյն կերպով որ ձեռք ձգած էր։ Եթէ ձեռք ձգելուն և պահելուն կերպերը նկատի չառնենք, բոլորովին ապիկար և ապարդիւն չէղան իւր օրերը, թէպէտև միշտ ստիպեալ էր աւելի դիրքը պահելու պայքարով զբաղիլ, քան թէ պաշտօնը արդիւնաւորել։ Մենք անաչառ պատմագիրի պարտքը ճանչնալով, ոչ Դաւիթի ջատագովութիւնը պիտի ընենք, և ոչ ալ Դանիէլի. այլ եղելութիւնները իրենց պարզ իսկութեան մէջ ներկայացնելով, անոնց հանգամանքներուն վրայ անկաշկանդ գնահատումնիս պիտի յայտնենք։ Ուստի պէտք չէ մեզ ինքիր հակառող կարծել, եթէ երկուքին մասին ալ լաւն ու վատը, օրինաւորն ու ապօրինին գրենք անխտիր։

**2253**. Մայրաթոռոյ միաբանները, եթէ պահ մը բռնադատեալ օծումի կատարեցին, սակայն սիրտով Դաւիթի կողմը չդարձան, և միտքերնուն մէջ հաստատուն մնաց թէ կանուխէն Դաւիթի դէմ զգացած հակակրութիւննին, և թէ վերջին անգամ կրած բռնադատութիւններնուն դժկամակութիւնը։

ՄԻԱԲԱՆԻՑ ԸՆԹԱՑՔԸ

Երրոր միաբաններու վրայ կը խօսինք, անոնց մեծամասնութեան և աւելի յարգելի անդամներուն կ'ակնարկենք, որովհետև Դաւիթի ալ անհնար չէր ողոքով կամ հրապոյրով, շահելով կամ բռնանալով իրեն կողմնակիցներ ստանալ, թէպէտ և այս կերպերով ալ միայն չորս անձ շահած լինելը կը հաւաստուի (ԴԻՒ. Ե. 218)։ Նշանակալից է 5 եպիսկոպոսներու և 11 վարդապետներու ստորագրութեամբ 1802 մայիս 20'ին գրուած և Կ-Պոլսեցւոց ուղղուած նամակը, ուր Դաւիթի մէկ տարուան իշխանութեան նկարագիրը կու տան, և իրենց կացութիւնը կը նկարագրեն։ Դաւիթի համար կ'ըսեն, թէ յառաջ բռնաւորութեան իւրոյ բարբարոսաց այս կեղծեաց և պաշտօնեաց զամենայն բարեկարգութեան, և թէ տիրելով ի խանն և ի հօրս լուսաւորութեան՝ առնէ լքութեամբ զոր ինչ և առնէ, և թէ գիրեր կը պատրաստէ և բռնութեամբ կնքել կու տայ, սպառնալով, որ եթէ ոչ ի ձեռն, խալիֆայէ՝ ինչպէս Պարսիկներ կ'անուանեն կաթողիկոսը, հրամանն զտանուտս յանձն կոտորել, զմօրուս նոցա գերծցեն, և խանին հարիւր թուման տուժեսցի, և եթէ ոչ տուժեսցէ, նոցա ի սենեակն եղեալ ինչսն՝ խանին եղիցի բովանդակ (ԴԻՒ. Ե. 210)։ Ուրիշ գիր մըն ալ կը գտնենք Աստուածատուր և Բարսեղ եպիսկոպոսներէ ստորագրուած, որով կը յայտնեն, թէ Դանիէլի և Եփրեմի ոչ թուղթ գրեմք առ նոսա, և ի նոցանէ թուղթ ու առնումք, և հակառակ պարագային հինգ հարիւր թուման տալոց լինիմք խանին (ԴԻՒ. Ե. 202), և այս գիրին ալ բռնի առնուած ըլլալը վկայուած է (ԴԻՒ. Ե. 216)։ Վերոյիշեալ նամակագիրները կը յայտնեն նաև, թէ քահանայք ամենեքեան, քաջ է լսելոց անձանց, իրենց համախոհ են, այլ ոչ երկիւղէ չկարացին դնել կնիք (ԴԻՒ. Ե. 218)։ Իրենց համար ալ կ'ըսեն, թէ Դաւիթ իրեն դէմ եղողներուն մասին բանադրանքի նոր գիր մը առաջարկած է ստորագրել, զոր չեն ուզեր կնքել, բայց եթէ ստիպեալ կնքենք, կ'ըսեն, ակամայ և բռնութեամբ կնքել համարեսջիք (ԴԻՒ. Ե. 216), և ըստ կամս սոցա կնքել թուղթն մեր՝ սուտ և անօրէնութեան սեպէք (ԴԻՒ. Ե. 217)։ Այս բացատրութիւնները չատ իսկ են յայտնել, թէ ինչ էր Դաւիթի գործածած կերպը, ձեռք անցուցած իշխանութիւնը պահել կարենալու համար։ Նկատողութեան արժանի է տուգանքները խանին վճարուելու պայմանը, որ ակներև կը ցուցնէ, թէ ուր հաստատած էր Դաւիթ իւր ոյժը, այսինքն խանին արտաքին բռնութեան վրայ։ Այս տեսութիւններով է որ Դաւիթ միաբանութեան կողմէ նկատուած էր։ 1. Իբր մերժեալ յաթոռէն, և ընկեցեալ յիշխանութենէն։ 2. Իբր որբացեալ և անօգնական։ 3. Իբր եկեղեցւոյ նզովեալ ի քահանայութենէ՝ ձեռնադրութեամբ երից մասանց։ 4. Իբր ու նախանձու և չար ախտին լրոյ գործող։ 5. Իբր բարբարոս մը, որոյ բրածները պարտ է համարել անպատշաճ մնացեալ ձեռնադրեալ, և իբրև չքաղաքական մոլեգնելոց (ԴԻՒ. Ե. 217)։

**2254**. Հակառակ այդ ձգտեալ կացութեան, որ կը տիրէր Դաւիթի և միաբանութեան միջև, Դաւիթ

ԴԱՒԻԹԻ ՃԱՆՉՑՈՒԻԼԸ

ամէն միջոց կը գործածէր իւր իշխանութիւնը օրինաւոր և կանոնաւոր վիճակի մէջ ցուցնել, և մտադրութիւն դար-

հրնել աթոռին մատակարարութեան առօրեայ պէտքերուն և ընթացիկ գործերուն։ Իր առաջին գործերէն մին եղաւ եպիսկոպոս ձեռնադրել Գրիգոր Աքքիրմանցին և Կարապետ Նորնախիջեւանցին, Յովսէփի ձեռնասունները, որոնք անոր մահուանէ ետքը Դաւիթը ընտրած էին իրենց պաշտպանեալը, որպէսզի փոխադարձաբար նա ալ իրենց պաշտպանն ըլլար։ Գրիգորը Ռուսիոյ առաջնորդ նշանակեց, որպէսզի Ռուսական կառավարութեան առջեւ պէտք եղածը գործադրէ իրեն համար, ինչպէս որ արդէն յաջողցուցած էր իր կաթողիկոսանալը։ Իսկ Կարապետն ալ Կ-Պոլիս ղրկեց, միաբանութեան բռնի ստորագրել տրուած հանրագրութեամբ, որպէսզի Յովհաննէս պատրիարքի միջնորդութեամբ արքունի հրովարտակը ստացուի։ Կ-Պոլսոյ մէջ ալ՝ Դաւիթ իր յոյսը Ռուսական պաշտպանութեան վրայ դրած էր, որով զօրացած էր իր առաջին քայլին մէջ, և ստուգիւ ալ Թամարով դեսպան, Գէորգ Աղայէկեանի միջնորդութեամբ, իր անպայման պաշտպանութիւնը նուիրեց Դաւիթի։ Յովհաննէս պատրիարք ալ շուտով այն կողմը հակեցաւ, և պատրիարքական ազդեցութեամբ Դաւիթի պաշտպան կանգնեցաւ։ Դանիէլեան կողմնակիցներ շատ խիստ են Յովհաննէսը դատապարտելու, իբր անձնասէր և շահասէր դիտումներէ մղուելով Դաւիթը պաշտպանող մը։ Այլ մեր տեսութեամբ Յովհաննէս աւելի գործնական միտքի հետեւող մը կ'երեւի, հեռու շատ մը վերացական կամ ձեւակերպական տեսութիւններէ, կատարեալ իրողութեանց համակերպող մը, և գաղափարական նպատակներու համար վրդովումներ չյարուցանող մը։ Յովհաննէս կը տեսնէր Դաւիթը օծուած, Պարսիկ և Ռուս կառավարութիւններէ պաշտպանուած, նոյնիսկ Կ-Պոլսոյ մէջ ալ Ռուսական դեսպանատունէն հովանաւորուած։ Կը մտածէր որ Դաւիթ կերպով մըն ալ շարունակութիւն կը սեպուէր արդէն ընդունուած Յովսէփի կաթողիկոսութեան (§ 2232)։ Յովհաննէս այդ պարագաները նկատի առնելով չէր ուզեր կատարուած իրողութեան դէմ զինուիլ, նորէն վրդովումներ ստեղծել, պարզապէս Դանիէլի պաշտպանութիւն ըրած ըլլալու համար։ Դանիէլեանք Յովհաննէսը կը մեղադրեն, թէ ցուած էր Դանիէլի դէմ, իրեն կաթողիկոս ընտրուած ատեն՝ Դաւիթը և ոչ զինքը պատրիարքութեան անցընելուն համար (§ 2227), և թէ այդ բանին վրէժը լուծելու համար Դաւիթի կողմը կը բռնէր (Դիւ. Ա. 95)։ Բայց այս կէտեր աւելի յարմարութեամբ մտածուած բաներ են, քան թէ իսկական իրողութիւն, ապա թէ ոչ միեւնոյն գրգռութեամբ պէտք չէր որ Դաւիթի ալ նպաստաւոր ըլլար։ Հետեւաբար աւելի պատմական կը կարծենք Յովհաննէսի գործնական ուղղութեան վերագրել Դաւիթի յաջողիլը, որով Օսմանեան կայսրութեան հրովարտակը ստացուեցաւ 1801 յունիս 14'ին (Դիւ. Ա. 98), Կարապետ Նոր-Նախիջեւանցին ալ զայն առնելով օգոստոս 19'ին Կ-Պոլիսէ մեկնեցաւ, և Կարնոյ ճամբով նոյեմբեր 10'ին, կիրակի օր, Էջմիածին հասաւ, կամ թէ նոյեմբեր 9'ին, եթէ պինդ պիտի բռնենք շաբաթ օր հասած ըլլալը (Դիւ. Ա. 96), Հրեշտակապետաց տօնին օրը։

ԴԱՆԻԷԼ Ի ՊԱՅԱԶԻՏ

**2255**. Դանիէլը ձգեցինք Եւդոկիոյ մէջ ուր հասաւ 1801 յունուար 22'ին (§ 2246), և ուր մնաց 80 օր, իբրեւ հիւր և ոչ իբրեւ առաջնորդ, և ապրիլ 11'ին մեկնեցաւ իր հետեւորդներով և Էջմիածինէ եկող առաջին երկու հրաւիրակներով, որք էին Յովհաննէս Պառաւեան և Ներսէս Աշտարակեցի վարդապետները (§ 2247)։ Դանիէլ, ինչպէս ուրիշ անգամներ, այս անգամ ալ հանդարտաքայլ կը յառաջէր։ Սեբաստիոյ և Ակնայ մէջ քանի մը օրեր կ'անցընէ, և Կապանմատէնի մէջ հիւր կը մնայ Փիլիպպոս Արփիարեան ամիրային, և հոն եղած ատեն կը ստանայ, Էջմիածինի երկրորդ հրաւիրակներուն՝ Ղազար և Ստեփանոս եպիսկոպոսներու Կարինէ գրած նամակը, որով կ'առաջարկէին ուղեւորութիւնը փութացնել (ՄՍՐ. 39)։ Իսկոյն յաջորդ առտուն ճամբայ կ'ելլէ (ՄՍՐ. 40), և մայիս 7'ին, Շուվերէն անունով գիւղը հասած օրը, լուր կ'առնէ ապրիլ 28'ին կատարուած օծումին մասին (§ 2248), և ամէնքն ալ ապշած կը մնան. զի և ոչ խօսք ընդ մեզ բերէին, թէ հնազանդեսցէ Դաւիթ

[illegible] (ՄՍՐ. 40)։ Դանիէլի Մշոյ Ս. Կարապետը հանդիպած ըլլալն ալ գիտենք (ՄՍՐ. 40). բայց միջոցը ճշդելու համար հարկ կ'ըլլար նշանաւոր դարձած Շուլերէն գիւղի դիրքը գիտնալ։ Այս տեղի հասնելէն եօթն օր առաջ մայիս 14'ին, Հոգեգալստեան երեքշաբթիին, կը հասնին Պայազիտ, հրաժարելով Կարինի վրայէն էջմիածին երթալէ, քանի որ Դաւիթ օծուած և աթոռին տիրապետած էր։ Շատ անգամ աննշանամանր պարագաներ են՝ որ ամենածանր հետեւանքներ կ'ունենան. այդ պարագային այլ հնար չէ չդիտել, որ եթէ Դանիէլ ապրիլ 11'ին Եւդոկիայէ մեկնելէ առաջ՝ այստեղ այնտեղ չմնար, և ուղղակի Կարնոյ վրայէն էջմիածին երթար, ապրիլ 28'էն առաջ հասած կ'ըլլար. և ազգն ու եկեղեցին անհեղ տագնապի մը չէր ենթարկուեր։ Երանի է՛ր եթէ Դանիէլ, իր ուղիղ և ընտիր բնաւորութեան չափ՝ գործունեայ և ճարտար ձիրքերով ալ փայլէր, կամ եթէ Դաւիթ իւր գործունեայ և ճարտար ձիրքերուն չափ՝ ուղիղ և ընտիր ընթացք ալ ունենար։ Բայց մենք եղելութեանց հետեւինք։

**ՄԱՆՈՒԷԼ ՊԱՏՈՒԻՐԱԿ**

2256. Վերջին զրկուած հրաւիրակներ, Ղազար և Ստեփան եպիսկոպոսներ ալ Կարինէ Պայազիտ եկան, և Դանիէլի առաջին հրաւիրակներուն հետ միանալով սկսան ինչ ընելիքնին կարգադրել։ Որովհետեւ էջմիածին տիրապետեալ էր և միաբանութիւնը բռնադատեալ, և Պարսիկ ու Ռուս կառավարութիւններն ալ շահուած էին, Դանիէլեանք աչուընին Տաճկահայոց վրայ դարձուցին, և այնտեղէ օգնութիւն և պաշտպանութիւն գտնելու համար ճանպայ հանեցին Դանիէլի հետեւորդներէն Մանուէլ Կիւմիւշխանացի վարդապետը, որ Ալթունեան (63 ԿԻՆ.741), և Շահինեան (ՄՍՐ. 41) կը կոչուի անխտիր, որ և մայիս 21'ին ճանպայ ելլալով յունիս 2'ին Կ-Պոլիս կը մտնէր հապճեպ ուղեւորութեամբ (ՄՍՐ. 43)։ Բայց չէր կրնար արգելել դեսպանատունին և պատրիարքարանին համամտութեամբ կազմուած՝ Դաւիթի նպաստաւոր հոսանքը, որ արդէն յառաջացած էր, և քիչ օր առաջ յունիս 14'ին կը ստացուէր Դաւիթի կաթողիկոսութիւնը հաստատող արքունի հրովարտակը (§ 2254)։ Այսու հանդերձ Մանուէլ անգործ չէր, եղածը եղծանելու և Դանիէլի նպաստաւոր շարժում մը գոյացնելու ջանքեր չխնայեց. բայց չկրցաւ Յովհաննէս պատրիարքի վրայ ազդել, որ Դաւիթի կաթողիկոսութիւնը լրացեալ գործ կը նկատէր, և Դանիէլի համար ըլլալիք ճիգերը իբրեւ նոր շփոթութեանց աղբիւր կը դատէր։ Յովհաննէս միանգամընդմիշտ խնդիրը փակելու համար, յուլիս 20'ին, շաբաթ օր, աւագանւոյ ժողով մըն ալ գումարեց, և Դաւիթի նպաստաւոր որոշում մը կայացուց, և միաբանութենէ կորզուած հանրագիրին ներքեւ իւրն ու մեծամեծներուն կնիքներն ալ աւելցուց և Կարապետ Նորնախիջեւանցիին յանձնեց, որ հրովարտակին հետ Դաւիթին հասցընէ (ՄՍՐ. 44), և օգոստոս 19'ին զայն ճանպայ հանեց (§ 2254)։ Ժողովէն օր մը առաջ, յուլիս 19'ին, Կ-Պոլիս կը հասնէր Ներսէս Աշտարակեցի վարդապետն ալ (ՄՍՐ. 44), Մանուէլի հետ աշխատակցելու. բայց շատ ուշ էր և Յովհաննէսի կարգադրութիւնները եղած էին։ Ներսէս յոյսը չկտրեց, այլ աւելի մեծ ճիգերու ձեռնարկեց, որպէս զի ընդգրկած դատը պաշտպանէ, և Դանիէլի կաթողիկոսութիւնը հաստատել տայ, Դաւիթը տապալելով, եթէ հարկ ըլլար՝ Յովհաննէսն ալ միասին, եթէ մինչեւ վերջ իրենց կողմը դառնալու ընդդիմանար։

**ՆԵՐՍԷՍ ԱՇՏԱՐԱԿԵՑԻ**

2257. Առաջին անգամը չէ որ Ներսէս Աշտարակեցի վարդապետի անունը կու տանք, և զոր օր մը կաթողիկոսական աթոռին վրայ պիտի տեսնանք, ուստի պէտք է կանխենք, և անոր նախընթացին վրայ կարեւոր բացատրութիւնները տանք։ Ներսէս Արագածոտն գաւառի Աշտարակ գիւղէն էր, 1770'ին ծնած, որով 1801'ին իւր ընդարձակ գործունէութեան սկիզբը, 31 տարեկան ժիրաժիր գործիչ մըն էր։ Հայրը գիւղին տէր Յարութիւն քահանան էր, ջրաղացպանութենէ եկած, աղքատ դասակարգի կը պատկանէր, և իւր երկու զաւակները, Ներսէսն ու Կարապետը, Գալուստ եպիսկոպոսին մօտ դրած էր իբրեւ սպասաւոր կամ փոքրաւոր

(Դիւ. Է. լը)։ Ներսէսի ընտանիքը Շահազիզեան մականունով ճանչցուած է, կամսարական տոհմին ազգական վկայուած է, թէպէտ բողներ կան, թէ վկայականը ողորմելեալ եր վերջել Դանիէլի ձեռքէն (Դիւ. Է. լէ)։ Բայց եթէ այդպէս ալ ըլլար, Ներսէս աւելի յանցաւոր չէր ըլլար իւր անտոհմիկ ազնուականութեան փափաքովը, քան Յովսէփ իւր Արղութեան Երկայնաբազուկ իշխանազուն և լուսաւորչեան և արքայական ցեղէ ըլլալուն կեղակարծ ազգաբանութեամբը։ Ներսէս իւր պատանեկութենէն Էջմիածինի դպրանոցին կ'աշակերտի, և իբր ուշիմ աշակերտ Դանիէլ Սուրմառեցի եպիսկոպոսին պաշտպանութեանը կ'արժանանայ, անոր ձեռքին ներքեւ կը կազմուի և կը յառաջէ, և Դանիէլի հետ միասին Էջմիածինէ Զմիւռնիա կու գայ անոր նուիրակ ղրկուած ատեն 1796'ին (§ 2182)։ Ներսէս մեղադրուած է, թէ իրեն պարտաւոր խեղճ ծերունի Դանիէլը Զմիւռնիայից անպատուած արտաքսեց (Դիւ. Է. լը), սակայն չենք գիտեր թէ ինչ պարագայով, և ինչչափ ստուգութեամբ, քանի որ պատմուած յիշատակ չենք գտներ։ Անկէ սկսելով Ներսէս անբաժան մնաց Դանիէլէ՝ Ռումելիի նուիրակութեան և անկէ Կ-Պոլիս գտնուելուն ատեն, մինչեւ որ Դանիէլ՝ 1799'ին պատրիարք ընտրուելէն ետքը, զայն Էջմիածին ճանպայ հանեց, իւր հաշիւներն ու ընծաները Ղուկաս կաթողիկոսին տանելու համար (§ 2223)։ Անկէ ետքը Ներսէս Էջմիածին մնաց՝ իբր երկու տարի, և Ղուկասի մահուանէ ետքը տեղի ունեցած անցուդարձերուն մասնակցեցաւ, մինչեւ որ 1801 մարտ 20'ին Յովհաննէս Պառաւեան վարդապետի հետ հրաւիրակ նշանակուեցաւ Դանիէլը Եւդոկիայէ Էջմիածին բերելու (§ 2244)։ Արդէն յիշեցինք, միասին Եւդոկիայէ Պայազիտ ուղեւորիլը (§ 2255), և Պայազիտէ Կ-Պոլիս պատգամաւոր դալը (§ 2256)։ Ներսէս հասակով և կազմով մանր մարդ մը եղած է, թէպէտ հոգւով ու սրտով՝ մեծամեծներու ձգտող, և գործունէութեամբ՝ չափ ու կշիռ չգիտցող։ Բայց մենք չենք ուզեր այդ մասին մեր կանխահատումը կանխել, թողլով որ եղելութիւնք անոր նկարագիրը յուսաբանեն։

**2258.** Երբոր Ներսէս Կ-Պոլսոյ մէջ բուռն ճիգեր կ'ընէր Դանիէլի կաթողիկոսութիւնը իրականացնելու, գործը աւելի յաջող պաշտպան մը կ'ունենար՝ Ռուսիոյ առաջնորդ Եփրեմ եպիսկոպոսով։

ԵՓՐԵՄ ԶՈՐԱԳԵՂՑԻ

Եփրեմ ալ ժամանակին նշանաւոր դէմքերէն է, և նա ալ կաթողիկոսական աթոռ բարձրացած է։ Հայրը բնիկ էր Զմիւռնիոյ նահանգին Մաղնիսա քաղաքէն, բայց ինքն ծնած էր 1748'ին Զորագեղ գիւղը, որ այժմ Երեւան քաղաքի թաղ կը սեպուի. և Մայրաթոռոյ աշակերտութեան մէջ յառաջացած էր հետզհետէ մինչեւ եպիսկոպոսական աստիճան։ Իւր կեանքին գլխաւոր գործն եղած էր Հնդկաստանի արդիւնաշատ նուիրակութիւնը, ուսկից ետքը 1799'ին փոխադրուած էր Ռուսաստանի նուիրակութեան Ղուկասի կարգադրութեամբ (§ 2218), որ կ'ուզէր կերպով մը Արղութեանի բացարձակ տիրապետութեան չափ մը դնել։ Միաբանութիւնը առաջին անգամէն զինքն կաթողիկոսութեան արժանի դատած էր (§ 2219), թէպէտ Եփրեմ հեռու էր այդ ձրգտումներէն, և յօժարակամ մէջտեղ դրած էր Յովսէփի ընտրելիութիւնը (§ 2221), և բուռ ամենայն ձեռնտու եղած էր անոր յաջողելուն։ Միայն թէ հաշտ չէր Դաւիթի անձին հետ, որուն ներքին բնաւորութիւնն ու կիրքերը իրեն լաւ ծանօթ էին, և չկըրցաւ հպատակիլ անոր կաթողիկոսութեան, բայց ոչ երբեք իւր անձին վրայ դարձնելու դիտմամբ, այլ միաբանութեան ընտրած և իւր ընտիր բնաւորութեամբը նախադասուած Դանիէլը պաշտպանելով։ Դաւիթ գիտնալով Եփրեմի հեղինակութիւնը, կը ջանար զայն իւր կողմն ունենալ կէս ողոքական և կէս սպառնական խօսքերով։ Սէրէլէր, կը գրէր, խաճմաղանաւոր եմ և թողէնամբոյր, և եթէ շփոթութեան ինչ և բան աւերողական է մեն ելանիցէ, և օգուտ մի ու երեւեցի, յետոյ ապաշխարանօք եմ և խղճահարելոց (Դիւ. Ջ. 8), և կը խրատէր, զի զփլուծ ոչ մի տայցես է զթողման և է քեն, այլ հանդարտութեամբ վարեսցես յանձնեալս քեզ գործ (Դիւ. Ջ. 9)։ Դաւիթ երկրորդական նպատակ ալ ունէր Եփրեմը շահելու, վասնզի Յովսէփ Ռուսաստանէ չմեկնած Ռուսիոյ առաջնորդութիւնը փոխանցած էր

Եփրեմի (§ 2234), իսկ Դաւիթ Գրիգորի հետ պայմանաւորեալ էր Ռուսաստանի առաջնորդութիւնը անոր տալ իբրեւ վարձ (§ 2254)։ Դաւիթ կ'ուզէր Եփրեմը հեռացնել, բայց Ռուսիոյ Հայերը երբեք յանձն չառին Գրիգորը առաջնորդ ունենալ, սպառնալով իսկ որ եթէ գայ՝ խայտառակէ. և Եփրեմի յայտարարելով, թէ զոր ես մեր առաջնորդ (Դիւ. Ա. 93)։ Այս պատճառով Գրիգոր չկրցաւ Ռուսաստանի մէջ առաջնորդ ճանչցուիլ, այլ քաշուեցաւ Բիշնեւ քաղաքը, էթէ յաջորդ ընդհանուր պատրիարքի, կամ մեր բացատրութեամբ՝ իբր կաթողիկոսական փոխանորդ, և ոչինչ կարող առնել, և կայ ծառայ անտէր մնալով յման իւր (Դիւ. Ա. 93)։

2259. Եփրեմ չգոհացաւ վերապահեալ դիմադրութեամբ, այլ յայտնապէս գործի ձեռնարկեց, Դաւիթը ամբաստանելով ճիշդ այն կողմէն, որով նա զօրացեր էր, այսինքն Ռուսական պաշտպանութիւնը իրմէ խլելով։

**ԵՓՐԵՄ Ի ՄՈՍԿՈՒԱ**

Լեհլեայն պատրաստեց իր հակառակութեան ծրագիրը, յարաբերութիւն պահեց Դաւիթի հակառակորդ միաբանութեան գլխաւորներուն հետ, և անոնց թեւադրեց պէտք եղած ամբաստանութիւնները հաւաքել Դաւիթի վրայ, և հաղորդել ուղղակի Լազարեանց տոհմին պետ Յովհաննէսի, և անոր Մինաս և Յովսէփ եղբայրներուն, որոնցմէ առաջինը Պետրբուրգ կը մնար, իսկ վերջինները Մոսկուա էին։ Դանիէլի ալ ազդարարեց որ ուղղակի Ռուսաց կայսեր դիմում ընէ իր իրաւունքը հաստատելով, և իրեն դէմ եղած անիրաւութիւնները բացատրելով։ Ինքն ալ Ռուսաստանի Հայերէն, և գլխաւորաբար Աստրախանի ու Մոզդոկի ու Ղզլարի հասարակութիւններէն իրեն նպաստաւոր, և Դաւիթէն նշանակուած Գրիգորի դէմ գրութիւններ պատրաստել տուաւ (ՄՍՐ. 45), միանգամայն Կ-Պոլսոյ հետ ալ յարաբերութիւնները մշակեց, և պէտք եղած հրահանգները Ներսէսի կու տար, և անկէ լուրեր կը ստանար (ՄՍՐ. 46)։ Եփրեմի նպատակն էր Աղեքսանդր Ա'ի օծման հանդէսին ներկայ գտնուիլ. որ պիտի կատարուէր Մոսկուայի մէջ 1801 սեպտեմբեր 15'ին կիրակի օր. հետեւաբար նախապէս պէտք էր Մոզդոկի Ռուս կուսակալին հաւանութիւնն ու պաշտպանութիւնն ապահովել, և այս նպատակով խլեր հանել Դաւիթի գործերուն ապօրինութիւնները, Յովսէփի կտակին արտութիւնը, Դաւիթի գլխուորներու բռնութեամբ օծուիլը, Էջմիածինի մէջ տիրող հակառակութիւնը, Կոստանդնուպոլսոյ մէջ տեղի ունեցած անհամաձայնութիւնները, Դաւիթի կեղծուպատիր ուղղութիւնը, Ռուսական շահերէն աւելի Երեւանի խանութեան նպաստաւոր ըլլալը, և այլ սոյնպիսի պարագաները, որոնք ազդեցին կուսակալին վրայ, և Եփրեմը արտօնեց Մոսկուա երթալ, յանդիման լինել կայսեր, մերժել զդատաւորս ճշմարտութեանն, և խնդրել հրաման։ Այդ առաջին յաջողութեամբ ոգեւորուած, Եփրեմ մայիս 15'ին Կ-Պոլսեցոց կը գրէր, թէ Մոսկուա կ'երթայ ծանուցանել զխորամանկութիւն Գրիգորի և Դաւթի, և կը սրտապնդէր ըսելով, զոր ի վերայ ճշմարտութեան հատուածն կոչէ (ՄՍՐ. 47)։ Դաւիթի անկարգ ընթացքն ալ կրնար իբր փաստ ծառայել, և անշուշտ Եփրեմ զանց չըրաւ Մայր աթոռին մէջ Դաւիթի գործած բռնութիւնները ալ պատմել կուսակալին և որոց որ պէտք էր, իբր իր առանձնած դատին նպաստաւոր փաստեր։

2260. Եփրեմ իր նախապատրաստութիւնները աւարտելով 1801 օգոստոս 27'ին, երեքշաբթի օր կը հասնէր Մոսկուա, կը հասնէին նաեւ իր թելադրած գրութիւնները (§ 2259).

**ԱՂԵՔՍԱՆԴՐ ԿԱՅՍՐ**

և Յովհաննէս Լազարեան կատարեալ եռանդով գործին կը փարէր։ Ինքն Պետրբուրգի կառավարական շրջանակներու մէջ կը յաջողէր Եփրեմի առաջնորդութիւնը հաստատել տալ, և Դաւիթի մասին աննպաստ հոսանքը կը զօրացնէր. եղբայրներուն ալ կը յանձնարարէր, որ Մոսկուայի մէջ պէտք եղածը հոգան։ Եփրեմ պաշտօնապէս ներկայ կը գտնուէր սեպտեմբեր 15'ին, Աղեքսանդրի թագադրութեան և օծման հանդէսին, կայսեր մօտ ալ ընդունելութիւն գտնելով, Դանիէլի իրաւունքը կը բացատրէր, և կայսրը կը համոզէր. ոչ միայն իր առաջնորդութիւնը կը ճանչցուէր և պանակէ կրկին արտօնութեամբ կը պատուէր

(ՄՄՐ. 47), այլ և կը ստանար սեպտեմբեր 26'ի նշանաւոր հրովարտակը, որով կայսրը գեսպան Թամարովի կը հրամայէ ուղղու-թիւնը փոխել, Դաւիթի համար եղած պաշտ-պանութիւնը դադարեցնել, Դանիէլի կա-թողիկոսութիւնը պաշտպանել, յիշելով Դա-ւիթի նենգութիւնները, ինչպէս իւր կարգին ակնարկեցինք (§ 2250). և կ'եզրակացնէր այդ գերազանց յայտարարութեամբ, թէ որ-չափ ալ առաջ գործուածը Ռուսիոյ համար օգտաւէտ համարւում, եւ աւելի լաւ էր համա-րում այս անգամ ցոյց տալ օգտակարը, քան թէ արհամարհել ժողովրդական յոյսը, և ձեռնամուխ լինել ճշմարտութիւնը խանգարելու (ԵՐՑ. Ա. 20)։ Միեւնոյն հրահանգը կը տրուէր Կովկասի կողմանց կուսակալ Կնօրինի, և յանկարծ հիմնապէս կը փոխուէր Ռուս պաշտօնէու-թեան ուղղութիւնը։ Ասոր պատճառն էր Աղեքսանդր Ա կայսեր լուսամիտ որոշումը, որ չէր վարաներ թիւրիմացութեամբ սկսած գործէն ետ դառնալ, երբոր ճշմարտութեան կը համոզուէր (ԵՐՑ. Ա. 21)։ Իրաւամբ ար-տաքիններն ալ՝ [illegible] արդար և խաղաղասէր հռչակած են Աղեքսանդրը (ՃՕՐ. 413)։ Անոնք որ Դաւիթին ընթացքը չքմնելու նպատակն ունէին, Դանիէլը և Դանիէլեանները կը մե-ղադրեն, թէ Ռուսական պաշտպանութեան գիրկը ինկան, և Ռուսներուն դէպ Հայաս-տան ընդարձակուելուն օգնեցին, իբր թէ ուզէին ըսել, թէ ապօրինի և անտեղի միջո-ցով զօրացան։ Սակայն կը մոռնան յիշել, որ Ցովսէփի յաջողութեան հիմը Ռուսական պաշտպանութիւնն էր եղած, և իրենք Ցով-սէփը օգտակար ուղղութեան հեղինակ կ'ըն-դունին։ Չեն յիշեր թէ Դաւիթ ինքզինքը իբրեւ Ցովսէփի ուղղութեան շարունակող ներկայեց Աքքիրմանցիին հովանաւորու-թեամբ, և անով իւր նախաքայլը առաւ։ Միտքերնին չեն ուզեր բերել, թէ Երեւանի խանը առաջ Դանիէլի պաշտպանութեան միտեալ էր, և միայն Ռուսական հրահանգ-ներու ազդեցութեամբ միտում և ընթացք փոխեց, և Դաւիթի պաշտպան դարձաւ։ Հետեւաբար երկուքին ընթացքները իրա-րու մօտեցնելով, կամ պէտք է Դանիէլը արդարացնել Դաւիթի հետ բաղդատու-թեամբ, իսկ եթէ Դանիէլը պիտի մեղադրեն, անկէ առաջ Դաւիթը մեղադրանքի պէտք է ենթարկեն, և դատապարտեն անոր կաթո-ղիկոսանալը։ Մեր տեսութեամբ Ռուսական պաշտպանութիւնը՝ Պարսկական տիրապե-տութեան նախադասողները կ'արդարանան, և առանց երկար պատճառաբանութեանց մտնելու, բաւական սեպուի 1801'ի Պարս-կական Հայաստանը բաղդատել այժմ-եան Ռուսական Հայաստանի հետ։ Եթէ չի մեղադրուիր Դաւիթը Ռուսական հովանա-ւորութեան դիմելուն համար, պէտք չէ որ Դանիէլը կամ Եփրեմը մեղադրուին, նոյն զէնքը Դաւիթի դէմ գործածած ըլլալնուն համար։

**Կ-ՊՈԼՍՈՅ ՄԷՋ**

**2261.** Երբոր Եփրեմ Ռուսիոյ կողմէն Դանիէլի պաշտպանութիւնը կը պատրաս-տէր, Դաւիթ այն կողմէ հովանաւորութիւն գըտ-նելէ յոյսը կորելով, Տաճ-կական պաշտպանութեան ետեւէ կ'ըլլար, ուր Ցովհաննէս պատրիար-քի ազդեցութիւնը՝ և իւր անուան ստացուած հրովարտակը իրեն համար կարեւոր ույժեր էին։ Միւս կողմանէ Դաւիթ, որ պաշտօն-եաներ շահելով ձեռքի տակէն գործեր կա-տարել տալու հմուտ էր, կ'աշխատէր Պայա-զիտի Օսմանեան կուսակալին օգնութեամբ Դանիէլը Թակարդի մէջ Թողուլ, և իրեն ձեռքին ներքեւ առնելով, զայն ընկճել, և այսպէս հակառակութիւնը հիմէն քանդել և կործանել։ Բայց գաղտնիքը երեւան ելաւ, և Դանիէլ զայն հաղորդեց Կ-Պոլիս, ուր էին իւր հաւատարիմները՝ Մանուէլ և Ներսէս, անոնք ալ չարժումի դրին իրենց համա-խոհ ամիրաները, որոնք բարեկամ աւագա-նիին միջնորդութեամբ յաջողեցան հարկ ե-ղած հրահանգները ղրկել տալ Պայազիտ և Կարին, որով Դանիէլ կրցաւ Պայազիտէ Կա-րին փոխադրուիլ, և տեղական կուսակալին հովանաւորութեան ներքեւ, Դաւիթի լա-րած ծուղակին մէջ իյնալէ զերծ մնալ։ Կ-Պոլիսէ ղրկուած հրամանին Թուական կը ցուցուի 1801 հոկտեմբեր 8 (ՄՄՐ. 48), Մոս-կուայի մէջ ստացուած յաջողութենէն քիչ օր ետքը։ Թերեւս Ռուսիոյ արձագանգը, և եթէ եղելութիւնը ոչ՝ գոնէ Եփրեմի վըս-տահացուցիչ նամակին ազդեցութիւնը (§ 2259), ոգեւորած էր Կ-Պոլսոյ Դանիէլեան-ները, ժրութեամբ գործել իրենց նպատա-

կին իրականացման համար։ Առաջին յաջող քայլին վրայ քիչ օր անցաւ, և նոր ոյժ ստացան Դանիէլեանք Եփրեմ եպիսկոպոսի սեպտեմբեր 19'ին գրած նամակով (ՊէՐ. 30-37), որ Կ-Պոլիս հասաւ հոկտեմբեր 17'ին (ՄՍՐ. 48)։Նամակը ուղղուած էր Յովհաննէս պատրիարքին, և մայրաքաղաքի իշխանաց, ամիրայից, էսնաֆից, արհեստաւորաց և ժողովրդականաց (ՊէՐ. 30), որով պատրիարքին հնար չեղաւ զայն ծածուկ պահել։ Եփրեմ ազդու և սթափեցուցիչ ոճով գրած էր իւր նամակը. Զօրբէր Պօլէօտ (ՊէՐ. 30), և Աստղ կորդոմ է վերայ անշէնտ, ով Պօլէօտ լաեալ (ՊէՐ. 31) բարանութիւններով, և մեղադրելով որ Դանիէլը՝ Կ-Պոլսեցւոց ընտրեալը լինելով՝ չեն պաշտպաներ։ Յովսէփի կաթողիկոսութիւնը յիշելով, կը դիտէր, որ նա ոչ միայն անօգուտ որբեղէօկողոս էր, և հաճոյ գտեալ էր յոլը կայսերն Պօղոսի, այլև չյանդգնեցաւ կաթողիկոս հրաչակուիլ և էջմիածին երթալ, այլ ողոքէր շնորհասրութեան Կ-Պոլսոյ (ՊէՐ. 31)։ Աստ կը հակադրէ Դաւիթը, որ առանց Կ-Պոլսոյ հաւանութեան, արտաքին բռնութեամբ օծուեցաւ, զի է ժամ լծման, Մոհմէտական զինուորք՝ որովք և մեծօք և այլ անհաւատական գործեօք աստ ողով՝ օծել տուած են (ՊէՐ. 35)։ Կը յիշէ Դաւիթի բռնութիւններն ալ, զոր չկանոնէլեաս կ'անուանէ, կը հրաւիրէ որ Դանիէլը հաչակեն, և կը թելադրէ որ գրեն Դանիէլին ճնալ յիշուէլոյ, որ է Բագրեւանդայ Ս. Յովհաննէսը, և անդ օծանէլ (ՊէՐ. 35)։ Կը պատմէ Ռուսաց կայսեր խոստացած պաշտպանութիւնը, Թամարովի տրուած հրահանգը, և ժողովրդական ընտրութեան պաշտօնագիրին սպասուիլը, որ Ռուսաց կայսրէն Դանիէլի անունին հրովարտակ ալ տրուի (ՊէՐ. 36)։

**2262.** Եփրեմի նամակին ազդած ոգեւորութենէն անմասն մնաց միայն Յովհաննէս պատրիարք, զոր աւելի քան Դաւիթի անձին, ընդհանուր հանդարտութեան կուսակից, և աւելորդ խնդիրներէ զգուշացող ցուցուցինք (§ 2256)։ Սակայն գոնէ այս անգամ պէտք էր որ իւր նախընտրած ուղղութենէն հեռանար, քանի որ մեծ էր Դանիէլեան համակրութիւնը, և զօրաւոր զայն կաթողիկոսացնելու եռանդը, և աւելի զօրաւոր Դաւիթի բռնական ընթացքին զզուանքը։ Չենք գիտեր, թէ Դանիէլեան ոգեւորութեան վրայ մեծ վստահութիւն չունենալէն, թէ ոչ մտած ճանպէն ետ չդառնալու յամառութենէն, կամ թէ որեւէ անձնական օգուտի մը տեսակէտէն, Յովհաննէս ձեռքէ չթողուց Դաւիթի պաշտպանութիւնը, և իրեն վրայ հրաւիրեց հանրային հակակրութիւնը, որով Դանիէլեանք Դաւիթէ առաջ Յովհաննէսը տապալել որոշեցին։ Այդպիսի առիթներու մէջ Տաճկական պաշտօնեաները համոզելու համար գործածուած ազդեցիկ և հնչուն փաստերը ձեռք առնուեցան, և քիչ օրուան մէջ Յովհաննէսի պաշտօնանկութեան արքունի հրամանը ստացուեցաւ, և նամակին հասնելէն 12 օր ետքը, 1801 հոկտեմբեր 29'ին (ՊէՐ. 39), Յովհաննէս Կ-Պոլիսէ կը հեռացուէր, Եւդոկիա քաղաք աքսոր տարուելու համար, ուր ղրկուած էր Դանիէլ 1800'ին առաջնորդի անունով, և հոն հասած էր 1801 յունուար 22'ին (§ 2246)։ Հաւանական է որ առաջնորդի անունը տրուած ըլլայ Յովհաննէսի ալ, թէպէտ յայտնի գրուած չէ։ Յաջորդի ընտրութեան համար պայման էր այնպիսի մէկը ընտրել, որ չէ ժամ Դանիէլի զօրավարեալ, և ընկալեալ կարգաւ Նորին հաւանեալ, և Դանիէլեանց ռահվիրաները Մանուէլ և Ներսէս վարդապետներ, իրենց ձայնակից ունենալով Կաղզուանցի Պօղոս քահանան, Զաքարիա պատրիարքի եղբօրորդին (ՊէՐ. 37), թելադրեցին Գրիգոր Խամսեցի եպիսկոպոսի անունը, որ իրենց ուսուցիչն էր եղած (ՁԱՄ. Բ. 147), Եւդոկիոյ մէջ իրենց օգնած էր Դանիէլը ճանպայ հանած ատեններն (§ 2247), և որ տակաւին Եւդոկիոյ շրջանակին՝ նուիրակութիւնը կը կատարէր (ՊէՐ. 37)։ Մինչեւ Խամսեցիին հասնիլը տեղապահ նշանակուեցաւ Յակոբ եպիսկոպոս (ՄՍՐ. 48), Երուսաղէմի փոխանորդ (ԴԻԻ. Ա. 112), և Սամուածատուր Կ-Պոլսեցի վարդապետ հրաւիրակ յղուեցաւ, թերեւս Յովհաննէսի ալ ընկերացաւ Եւդոկիա, և այնտեղէն Խամսեցիին առաջնորդեց, որ մայրաքաղաք հասնելով, կառավարութեան ներկայացաւ 1801 դեկտեմբեր 19'ին, հինգշաբթի օր, և

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՇՏՕՆԱՆԿ

[illegible] (Դիւ. Ա. 115), և պաշտօնին ձեռնարկեց, իրեն փոխանորդ առնելով Ռումէլիի նուիրակ Գէորգ եպիսկոպոսը (ՊէՐ. 38):

**ԴԱՒԻԹ ԵՒ ՄԻԱԲԱՆՔ**

**2263**. Դանիէլեանց այդ առաջին յաղթանակը, ճանպայ կը բանար իրենց բուն նպատակին հասնելու, որ էր Դաւիթը տապալել, և Դանիէլը կաթողիկոսական աթոռ բարձրացնել, սակայն քաղաքական հանգամանքներ՝ դժուարութիւններ կը ներկայացնէին: Դանիէլեանց մեծ զօրութիւնը Տաճկական շրջանակին մէջն էր, հովանաւորութիւնն ալ Ռուսական շրջանակէն կու գար, մինչ Մայրաթոռն և անոր տիրապետող Դաւիթը՝ Պարսկական շրջանակին մէջ էին, որով դժուար կ'ըլլար ուղղակի Դաւիթին վրայ ազդեցութիւն կամ ստիպում կամ բռնադատութիւն բանեցնել: Միւս կողմէն Երեւանի Մահմատ խանը ամուր կը պահէր այն պաշտպանութիւնը, զոր վերջին անգամ սկսած էր ցուցնել Դաւիթին (§ 2245), մանաւանդ որ Դաւիթ գիտէր պատշաճ կերպերով, և պահանջուած միջոցներով մշակել Մահմատի բարեացակամութիւնը, և ոչ մի զոհողութեան առջեւ կանգ չառնել՝ Մահմատը իրեն պաշտպան պահելու համար, որ իր միակ հովանաւորը կը մնար: Բայց Ռուսական քաղաքականութեան փոփոխութիւնը, և Ցովհաննէսի պատրիարքութենէ հանուիլը՝ Էջմիածինի մէջ իրենց արձագանգը ունեցած էին. միաբանութիւնը համարձակութիւն առած էր Դաւիթի հանդէպ դիմադրութիւն և տժգոհութիւն յայտնելու: Իսկ Դաւիթ պէտք տեսած էր միաբանութիւնը բռնութեամբ ճնշել, և միւս կողմէն իր նիւթական տուացութեանց ապահովութիւնը հոգալ: Այդ միջոցին 1801 տարւոյ վերջին օրերը, սնտուկ մը Էջմիածինէ Երեւան կը ղրկուէր Դաւիթի կողմէն, իր թանկագին իրերը պարունակող, որպէս զի վտանգէ ազատ մնան իր եղբօր և անոր անկրօն պահպանութեան ներքեւ: Միաբանութեան մէջ զրոյց կը շրջի, թէ Գեղարդն ալ փոխադրուած է այն սնտուկով: Երեւանի մէջ սնտուկը կը գրաւուի, և կնիքի ներքեւ Էջմիածին կը դարձուի: Դաւիթ սնտուկը միաբանութեան առջեւ կը բանայ Ծնունդի գիշերը, 1802 յունուար 5'ին, որպէսզի միաբանութիւնը վստահացնէ թէ ինքն Գեղարդը փախուցած չէ (Դիւ. Է. ել): Բայց որպէսզի ցուցմունքը կատարեալ ըլլար, պէտք էր սնտուկը չեկած և չբացուած՝ Գեղարդը իր տեղը Մայրտաճարին մէջ մնացած ցուցնել, և ոչ թէ սնտուկին գալէն և բացուելէն ետքը մէջը չգտնուիլը ցուցմունք համարիլ: Դաւիթ ինքն կը գանգատէր, թէ [illegible], որով սնտուկին Էջմիածինի մէջ կրկին բացուիլը՝ ոչ մի նշանակութիւն չէր ունենար: Դաւիթ գրած էր ևս, որ Մահմատ խանին վրայ դրած է իր վստահութիւնը, և թէ [illegible]: Ասով աթոռապատկան տուացութիւնները գանձարանէն հանած ըլլալը կը հաստատէր, և անոնք կաշառակերին ձեռք իբր աւանդ յանձնելը՝ իր գաղտնի միտքը կը մատնանշէր: Դաւիթ կը խոստովանէր ևս՝ թէ [illegible], իմա Տաճիկն, [illegible] են իրեն, և միայն Մահմատի պաշտպանութիւնն է որուն կը վստահի (Դիւ. Է. ել), որ ըսել կ'ըլլայ թէ պարտաւոր էր զայն գոհացնել:

**ԴԱՒԻԹԻ ԲՌՆՈՒԹԻՒՆՔ**

**2264**. Դաւիթ իրաւունք ունէր Ռուսական և Օսմանեան կայսրութեանց պաշտպանութենէն յոյսը կտրել, քանի որ երկուքն ալ փոխած էին իրենց առաջին ուղղութիւնը: Ռուսական պաշտպանութիւնը վերջնականապէս իրեն զլացուած էր (§ 2260), իսկ Օսմանեան կառավարութիւնը, նոր պատրիարքի պաշտօնական դիմումին վրայ, դադարեցուցած էր կանուխէն տուած հրովարտակը (§ 2254), և նոր հրովարտակ տուած էր Դանիէլի անունով: Նոր հրովարտակին իբր թուական ցուցուած է 1801 նոյեմբեր 23 տարեթիւը (ԱՄՍ. 48), և ըսուած է ևս, թէ նոյեմբեր 10'ին խնդրուեցաւ տեղապահ Յակոբ եպիսկոպոսէն (Դիւ. Ա. 111), որով տեղի չմնար թուականի սխալմունք ենթադրել, հիմնուելով ուրիշ կողմէ տրուած տեղեկութեան, թէ Խամսեցին առաւ հրովարտակը (ՊէՐ.

39)։ Մանաւանդ որ այդ մասին Էջմիածինի միաբաններուն գրուած նամակն ալ 1802 յունուար 8'ին յղուած է (ՄՍՐ.48), և չենք իմանար թէ ինչու 45 օր յապաղած են յաջողութեան լուրը բարեկամներուն հաղորդելու։ Ինչ ալ ըլլայ Թուականի խնդիրը, հասած տեղեկութիւնները հարկաւ պիտի ոգեւորէին միաբանութիւնը, յայտնապէս Դաւիթին դէմ ելնելու, սակայն պատեհ մը պէտք էր զայն յայտնելու և ահա թէ ինչպէս ստեղծուեցաւ։ Գեղարդակիր կոչուած Յովհաննէս Ակնեցի եպիսկոպոս, բամբ կ'ըլլայ երբեմն, թէ ինքը երկու մատերով օծած է Դաւիթին գագաթը, եռքէն անոնցմով անոր աչքերը հանելու համար։ Խօսքը Դաւիթին ականջը կը հասնի, Յովհաննէս կը սկսի վախնալ, կը փորձէ փախչիլ, ղօրխուսունեամբ ձեռք կ'իյնայ, և տօնանկազէ էրկանեօէ կը բանտարկուի։ Այն ատեն Յովհաննէս ոչ ուստեք օգնութիւն գտնելով, կը պարտաւորուի խոնարհիլ, զղջում յայտնել, հնազանդութիւն խոստանալ և բանտարկութենէն ազատուիլ (ՄՍՐ. 41)։ Դաւիթ Յովհաննէսի վրայ հեազհետէ վստահութիւն զգալով, 1802 աւագ չարթուն մէջ զինքն Երեւան կը ղրկէ տը գօրծօյ էրէ (ՊԵՐ. 25), որ ուրիչ տեղ ցուցուած է՝ Դաւիթի եղբօրորդւոյն կնքահայրութիւնն ընել (ՄՍՐ. 42)։ Գեղարդակիրը, որ մինչեւ այն ատեն կրցեր էր կեղծել, առիթէն կ'օգտուի Էջմիածին չդառնալ, և Տփղիս անցնելով հակառակութեան կուսակցութեան գլուխն անցնիլ։ Դաւիթ փութաց 1802 ապրիլ 12'ին աւագ շաբաթ օր դէպի Կ-Պոլիս ճանպայ հանել Ստեփանոս Քուչուրեան եպիսկոպոսը, և Ղազար Վեցիկեան վարդապետը, Կ-Պոլսեցիները շահելու համար. մինչ միւս կողմէ իւր զայրոյթը կը թափէր Գեղարդակիրին մտերիմներուն վրայ։ Զատկի մեռելոցի օրը, ապրիլ 14'ին, ծերունի Ղազար խոստովանահայր եպիսկոպոսը կը դնէ ի բանտ խանէրէյին, Կարապետ Նորընծայ աբեղան կոյլում բանդի, Յակոբ Պոլսեցի վարդապետը եւս կոյլում բանդի, երեքն ալ չղթայի զարնուած, և ուրիշներուն վրայ ալ սպառնալիքներ կը տեղայ ի զինճիրէ գոնուլմա ընելու համար։ Միաբանները բոլոր սուք կ'ելլեն, թարքի և գայտի կը դիմեն ի վէհարանն, բանտարկեալները կ'ազատեն, անկէ բազմութեամբ տաճար կը հաւաքուին, և կը վճռեն թէ Դաւիթ է խոնգարէն բօրէկօրգօսունեան օղլին և ատէրէն օրբօյ օնուայ, և իրեն ալ գիր կը գրեն. Վասն ղանուղան անկօրգօսունեանց և բօրգօրասական գօրծոց գոյ՝ ու ըմբօնէմք ղէեղ, և ուխտիւք և նզովիւք որոշումնին կը հաստատեն (ՊԵՐ. 26)։

**ԴԱՐՁԵԱԼ ԲՌՆՈՒԹԻՒՆՔ**

2265. Միաբաններ կը մտածեն միանգամընդմիշտ Դաւիթի բռնութենէն ազատիլ, և կ'որոշեն խանին դիմել, ուստի Զատկի երեքշաբթի առտուն, 1802 ապրիլ 15'ին, վանքին դուռը փակեալ գտնելնուն, հիւսիսային պատէն ծակ մը կը բանան, և բազմութեամբ Երեւան խանին կը դիմեն գոչելով. Բօրջ ի մեջոց մերմ ղնօղէսն ղօյն, և բեր ղերնասր հօյրօղեան մեր, և կամ ղօյն ըմեղ ղօմնեօյն (ՊԵՐ. 26)։ Մահմատ կը չուարի, բայց վրայ կը հասնի Աղամալեան մելիքը, Դաւիթի եղբօր աներն ու անոր հզօր պաշտպանը, և տրամադրելի գումարներով և ընծաներով խանին միտքը կը շահի։ Երեւան դիմողներէն Աստուածատուր և Բարսեղ և Աւետիս եպիսկոպոսները կը բանտարկուին և կը տուգանուին, միացեալներն ալ հեծեալներու առջեւ ձգուելով, գօնէլօվ և հօրկօնելով, գլխէբօց և բօկօտն մինչեւ Էջմիածին կը քշուին, և Դաւիթի կը յանձնուին, որ ամէնքն ալ սենեակներու մէջ խիստ բանտարկութեան կ'ենթարկէ, չներելով ոչ մի պէտքի կամ կարիքի համար դուրս ելնել։ Յայտարարութիւն մըն ալ կը պատրաստէ, որով ստորագրողները պիտի խոստանան Դաւիթի հնազանդիլ, և եթէ հեռանան 100 թուման տուժել խանին։ Արժան է դիտել հին երեւոյթին կրկնումը, որ կը հաստատէ Դաւիթի և Մահմատի շահակցութեան և գործակցութեան գաղտնիքը։ Շատեր կը ստորագրեն և արգելարանէ կ'ազատին, բայց գլխաւորներուն դէմ կը խըստանայ Դաւիթ, և աւելի երկար ատեն բանտարկեալ կը թողու, Աբրահամ Աժտարխանցի վարդապետը ի բանտ խանէրէյին, Փիլիպպոս Եւդոկիացի վարդապետը յամբարն գօրօօյ, Յակոբ Պոլսեցի վարդապետը ի Ղօղօրտօտի, Ղազար խոստովանահայր եպիս-

կոպար ջերմ սէր ունենէկ, Ստեփանոս և Ռեթէոս վարդապետները, Կարապետ աբեղան, Եփրեմ սարկաւագը և Իգնատիոս տիրացուն զանազան արգելարաններ, իսկ Աստուածատուր ու Բարսեղ ու Յովհաննէս ու Աւետիս եպիսկոպոսները Երևանի բանտը (ՊԷՐ. 28), մինչև իսկ «Պետրոս եպիսկոպոս ողորմած օտար անդ է քանդին» (ՊԷՐ. 50)։ Միաբանութեան վրայ ճնշումը կատարեալ ընելու համար, Երևանէ վերևել Տաճկէ բերել կուտայ, որպէսզի յանուն Մահմատի բռնութիւնները խստացնեն։ Միաբաններէն ոմանք այդ եղելութեանց մասին գիրեր կը գրեն մայիս 20'ին, և գաղտնի միջոցներով Կ-Պոլիս և Մոսկուա կը հասցնեն (ՄՍՐ. 51), խնդրելով որ ջանան «ազատել զմեզ և զեղ ի ձեռաց բարբարոսաց այսմիկ» (ՊԷՐ. 29)։

2266. Բայց Կ-Պոլսոյ պատրիարքը և Դանիէլեանք ալ անգործ չէին։ Դանիէլի անունին ստացուած կաթողիկոսութեան հրովարտակը, և երեք բազմակնիք գրութիւններ, Դանիէլին, Միաբանութեան և Մահմատ խանին

ԴԱՆԻԷԼԻ ՕԾՈՒԻԼԸ

ուղղուած։ Ճանպայ կը հանեն 1802 յունուար 8'ին Ներսէս Աշտարակեցի վարդապետին ձեռքով, Կարին տանելու համար, ուր կը հասնի նա փետրուար 21'ին, և կուսակալին ձեռքով Միաբանութեան և Մահմատի ուղղուած գիրերը կը ղրկէ Երևան, և Դանիէլն ալ մարտ 9'ին ճանպայ կը հանէ դառնալ Պայազիտ (ԴԻԻ. Ա. 112-124), զի հրահանգ տրուած էր իրեն, որևէ միջոցով Դանիէլի կաթողիկոսութիւնը հռչակել և ծիսական կարգադրութիւնները լրացնել, որպէսզի Դաւիթի դիրքն ալ խախտի, և իրեն դիմադրող կաթողիկոս մը գտնուի, և ազգային կացութիւնը անգլուխ չներկայացուի։ Արդէն Եփրեմ թելադրած էր, որ եթէ անհնար ըլլայ Դաւիթը Էջմիածինէ հեռացնել և Դանիէլը այնտեղ բազմեցնել, Պարսկական պաշտպանութեան պատճառով, Բագրեւանդայ տաճարին մէջ կաթողիկոսական օծում կատարուի (§ 2261), և այս առաջարկը հաւանութիւն գտած էր Կ-Պոլսոյ մէջ, և ըստ այնմ հրահանգ կը տրուէր Ներսէսի, Կարին ուղեւորած ատեն (ՊԷՐ. 39)։ Նոյնիսկ Էջմիածինի միաբաններն ալ մայիս 20'ի նամակով, որուն ստորագրած էին 5 եպիսկոպոսներ և 12 վարդապետներ, կը հաւանէին որ Դանիէլ, Էջմիածինէ դուրս «է վերաբերեալ Օսմանցւոց կաթողիկոսական աթոռ հաստատէ, օծցէ և նոցա անդ, և չէ որ հայրապետութեան խորոյ կոտորեալ օրհնագործեալ զվասն նոյն» (ԴԻԻ. Ե. 218)։ Այս նպատակով պէտք էր ծիսական պահանջից համեմատ եպիսկոպոսներ ունենալ, և գործին կարևորութիւն տալու չափ եկեղեցականներ և իշխանաւորներ հաւաքել, ուստի պէտք եղած հրաւիրագիրներ ցրուեցան, և պատուիրակներ հանուեցան։ Այդ պարագաներուն մէջ նշանակելի է Աշտարակեցի Ներսէսի գործունէութիւնը, զի գաղափարը իրենը չէր, և գործին գլխաւորութիւնն ալ Դանիէլի կը պատկանէր, բայց գործադրութիւնը Ներսէսի ջանքերուն արդիւնք եղաւ։ Պայազիտ գալերնին ալ, Բագրեւանդի վանքին մօտ գտնուելու, և պատրաստութեանց հսկելու համար էր։ Հանդէսին առաւելագոյն փայլ, և ազգային համերաշխութեան հաւաստիք աւելցնելու համար, յատկապէս հրաւիրուեցաւ Աղթամարայ Կարապետ կաթողիկոսն ալ (§ 2174), օծող եպիսկոպոսներու նախագահելու։ Եպիսկոպոսներու կանոնական 12 թիւն ալ աւելիով լրացաւ զի տասնևվեց եպիսկոպոս հաւաքուեցան Կարապետ կաթողիկոսով մէկտեղ, (ԴԻԻ. Ե. 236), և են, Գէորգ՝ Արտազու, Խաչատուր՝ Աղբակի, Գրիգոր՝ Սեբաստիոյ, Գրիգոր՝ Բաղուայ, Յովհաննէս՝ Մշոյ Ս. Առաքելոց, Յովհաննէս՝ Մշոյ Ս. Կարապետի, Փիլիպպոս՝ Խարբերդի, Անտոն՝ Մանազկերտի, Գրիգոր՝ Բաղէշի, Աբրահամ՝ Դերջանի, Կարապետ՝ Կեսարիոյ, Մանուէլ՝ Վարդինօր վանաց, Աբրահամ՝ Լուսաղբեր վանաց, Մարտիրոս Էջմիածինի միաբան (ԴԻԻ. Ե. 234), և մէկը միայն անծանօթ կը մնայ։ Ներկայ վարդապետներուն թիւը նշանակուած է երեսուններկու, որոնցմէ 22 հատի ստորագրութիւններ կը կարդացուին։ Անապատաւորք և աբեղայք և քահանայք եղած են 102, որոնցմէ 35 ստորագրած են յայտնելով, թէ «մեք այսուհետև հաւատարմութեան կնքեալ քահանայք» (ԴԻԻ. Ե. 236)։ Աշխարհական իշխանք և ժողովուրդք եղած են «աւելի քան երբեք հազար», սակայն անոնց մէջէն անունով յիշատակուածներ չու-

նինք։ Այդ միջոցին Եփրեմ եպիսկոպոս կ'աշխատէր Դանիէլի անունին հրովարտակ հանել տալ Ռուսաց կայսրէն ալ, որուն Թամարով ղեսպան հասուցած էր Օսմանեան հրովարտակին պատճէնը։ Իրօք ալ կը յաջողէր զայն ստանալ մայիս 19 թուականով (Դիւ. Ե. 213), ուր յայտնապէս կ'արտօնուի Դանիէլ իւր կոադյուտորութեան ի ներքոյ ունել բոլոր Ռուսաստանի Հայերը։ Հրովարտակին հետ հարուստ չուրջառ մըն ալ ընծայ կը յղուէր կայսրէն, պէտք եղած երիզներով և ծոպերով (Դիւ. Ա. 134)։ Ամէն պատրաստութիւնները լրացնելով, կաթողիկոսական օծման հանդէսը կը կատարուի 1802 մայիս 25, Երկրորդ Ծաղկազարդի կիրակէին (Դիւ. Ա. 153)։ Ասկից ետքը միւռոնօրհնէք ալ կատարուեցաւ վիճակներու ցրուելու համար, և չորս վարդապետներու ալ եպիսկոպոսական ձեռնադրութիւն տրուեցաւ (ՄՄՐ. 52)։ Այս կերպով կը կարծէին ամէնքը թէ խնդիրը լուծուած և հակառակութիւնները ջնջած եղան, մինչ հետեւանքը հակառակն եղաւ, և երկպառակութիւններ և գայթակղութիւններ աւելի սաստկացան։

**2267.** Դանիէլի օծումը կատարողներ, իրենց գործին ջատագովութիւնը ըրած են,

ՎՃԻՌ ՍԻՒՆՀՈԴՈՍԻ

Քննութիւն ընտրութեան օծման հանդէսի մակագրութեամբ ընդարձակ գրուածով մը (Դիւ. Ե. 219-236), որ կանուխ պատրաստուած էր անշուշտ, թէպէտ մայիս 27 թուական կը կրէ (Դիւ. Ե. 234), օծումէն երկու օր ետքը լրացած և ստորագրուած ըլլալուն համար, ուսկից ամփոփումներ ալ կազմուած են (ՊԷՐ. 39-44), Քաղուած օծմանհանդիսական վճռոյն մակագրութեամբ (ՄՄՐ. 53)։ Ամենայն հաւանականութեամբ նոյնինքն Ներսէս Աշտարակեցին եղած կ'ըլլայ այդ վճիռը խմբագրողը, որ ինքն ալ ստորագրած է, վարդապետաց կարգին 11'րդ տեղը, իբր Ներսէս վարդապետ, Դաւթեան սուրբ Էջմիածնի (Դիւ. Ե. 235)։ Այդ գրուածը հինգ հատուածներու բաժնուած է, որ Բան կը կոչուին։ Առաջին բանը, կը յայտնէ թէ ժողովի գումարուած են Տրդատի մկրտութեան տեղը (§ 68), և քննութեան ենթարկած են Դաւիթի խնդիրը, և վճռած են զայն՝ խոկացեալ ընդ դատապարտութեամբ եկեղեցւոյ, և անվաւեր օծութիւն նորա (Դիւ. Ե. 220)։ Վճիռին փաստերուն անցնելով երկրորդ բանին մէջ, առջեւ կը բերէն կաթողիկոսական օծման կանոնէ հատուած մը, ուր ըսուած է թէ մանաւանդ եւս կաթողիկոսը Դ՛ լեցէ անյիշելի, և ընտրեալ արժանին է յետ կոչման ազգային իշխանաց, զի պէտք է ընտրելին ձեռաց Աստուծոյ և քահանայապետ ընտրեալ եղեալ է։ Նմանապէս Շնորհալիի Ընդհանրականէն առջեւ կը բերեն Դաւիթ Թոռնիկեանի հակաթոռ կաթողիկոսութեան մասին ըսուածները, և անոր դատապարտութիւնը և մերժումը Սեաւլերան ժողովին կողմէ (§ 929)։ Բաղդատութեան համար չատ յարմար եկած է Թոռնիկեանին և Էնէգէթցիին ալ համանուն կերպով Դաւիթ կոչուիլը։ Երրորդ բանին մէջ յառաջ կը բերուին Էջմիածնի միաբանութեան Դաւիթի կաթողիկոսութիւնը մերժելուն մասին յայտարարութիւնները, երկուքը 1801 ապրիլ 8'ին Երեւանի Մահմատ խանին և Վրաց Դաւիթ խանին ուղղուած, և չորսը 1802 մայիս 20'ին գրուած, համիմաստ կերպով, որոնցմէ Կ-Պոլիս ղրկուածը իւր ամբողջութեամբ կ'արտագրեն (Դիւ. Ե. 221-227)։ Չորրորդ բանին մէջ, կը յիշեն թէ ուրիշ թուղթեր ալ տեսած են, և Դաւիթի ընթացքն ալ քննած, և կը յաւելուն, դատապարտեցաւ զնա ինքն Դաւիթ և զամենայն համախոհս իւր դատապարտութեամբն եկեղեցւոյ, մինչև զղջասցին ապաշխարեսցեն, և զինն ալ յետս օրէնաւոր արքայանին տացէ աստուածային իրաւանց (Դիւ. Ե. 228)։ Հինգերորդ բանը կը բացատրէ Դանիէլի կոչումն է ըստ կանոնի ժամանակ, և արժանապէս օծումն, ուր պատմական ոճով քաղուած են Ղուկասի մահուանէ ետքը տեղի ունեցած գործերը կաթողիկոսական ընտրութեան մասին, որոնցմէ կը հետեւի թէ Դանիէլ օրինաւորապէս ընտրեալ մըն է, և Դաւիթ աթոռի յափշտակիչ մը, ուստի Դանիէլը օրինաւորապէս օծած են այս անգամ, և Դաւիթն ու իրեննները դատապարտած։ Անոր ձեռնադրած եպիսկոպոսները կը հռչակեն անընդունելի եկեղեցւոյ սրբոյ և բոլոր ազգի մերում, որով առանց անուննին յիշուելու կը մատնանշուին Գրիգոր Աքքիրմանցին և Կարապետ Նոր-Նախիջեւանցին։ Դանիէլ կոչուած է հոգէընտիր, կուսակրօն և ու-

Քահրամանէր օղլու կաթողիկոս Ամենայն Հայոց, և Դաւիթ ու Դաւիթեանք կը հրաւիրուին անոր դիմել որ նզովքէ ազատուին (ԴԻԻ. Ե. 228-234)։ Ինչպէս յիշեցինք 72 եկեղեցականներ ստորագրած են այդ վճիռին, թէպէտ ներկաներ եղած են 157 ընդամէնն։ Բագրեւանդի տաճարին տրուած կարեւորութիւնը բացատրելու համար, Տրդատի մկրտութենէն, ինչպէս նաեւ Սահակի այնտեղ մեռնելէն (§ 228), և հնօրեայ նշանաւոր տաճար մը ըլլալէն զատ, կրնանք դիտել համառօտութեան պարագայ մը, զի Թուրք և Պարսիկ տիրապետողներու սովորութեամբ, Էջմիածինի և Բագրեւանդի տաճարները համապատասխանաբար Իւչքիլիսէ, կամ Երեք-Եկեղեցի կը կոչուէին, զոր ժողովական վճռագիրը (ԴԻԻ. Ե. 234) և Դանիէլի անդրանիկ կոնդակը (ԴԻԻ. Ա. 154) Երեք-Վանք կը թարգմանեն, և ուրիշներ Ըչէ-Խլ-քա կը վերածեն (ՇԱՀ. Ա. 234)։

**ԿԱՆՈՆԱԿԱՆ ՏԵՍԱԿԷՏԸ**

**2268.** Այս է Բագրեւանդի մէջ կատարուած օծութեան մասին, օծողներուն և օծեալին տեսութիւնը, որոնք ամենայն օրինաւորութեամբ և ամենայն իմաստութեամբ գործ մը կատարած ըլլալու համոզումը կ'արտայայտեն։ Քիչ մը վերը ակնարկեցինք թէ կատարուած եղելութիւնը իր նպատակին չհասաւ, զի երկպառակութիւնը չվերջացուց, մանաւանդ թէ նորանոր արկածներու առիթ տուաւ։ Իսկ օրինաւորութեան մասին կարծիք մը յայտնելու համար, պէտք է շատ կէտեր միանգամայն նկատի առնել։ Ստոյգ է թէ Դանիէլ իրաւապէս ընտրեալ մըն էր, ամէն կողմէ պէտք եղած պայմանները լրացած էին, Մայրաթոռոյ միաբանութեան կամքը, Տաճկահայոց հաւանութիւնը, Օսմանեան և Ռուսական կայսերութեանց հաստատութիւնները կատարուած էին, բայց իրապէս իր իրաւունքին վայելման մտած չէր։ Ստոյգ է նոյնպէս որ Դաւիթ իրաւապէս ընտրութեան պայմանները չէր վայելեր, առանց կանոնական ընտրութեան իւրովի բարձրացած էր, արտաքին բռնութեան շնորհիւ աթոռին տիրացած էր, տիրանալէն ետքը բանի կերպով հաւանութեան յայտարարութիւններ ձեռք ձգած էր, իր դիրքը պահելու համար ալ՝ միայն բռնութեան և կաշառքի ոյժերով կը զօրանար։ Բայց իրապէս աթոռի տէր դարձած էր, երբ տակաւին ուրիշ մը անոր տիրացած չէր։ Մենք արդէն յայտնած ենք մեր կարծիքը, թէ ինչպէս լոկ իրապէս կատարուած մի բան՝ իրաւապէս եղած ըլլալու կերպարանը կը զգենու (§ 2250). և փոխադարձաբար իրաւապէս եղած մի բան, իրապէս չեղած առթին իր զօրութենէն կ'իյնայ։ Մենք կրնանք ընդունիլ, թէ Դաւիթը բռնի ստացուած դիրքէն հալածելու համար եղած ձեռնարկները՝ մեղադրելի չէին կըրնար սեպուիլ, զի անիրաւ ստացութեան դէմ ճիգեր չեն կրնար երբեք արգելուիլ։ Բայց այդ պէտք էր ընել նոյնիսկ Դաւիթի դիրքը խախտելով, և զինքը Էջմիածինէ հալածելով։ Հետեւապէս ոչ ճարտար և ոչ արդիւնաւոր ձեռնարկ կը դատենք իր տեղը թողուլ մէկ մը, որ դիրքին տիրացած է, և անոր իր դիրքին մէջ կեցած ատեն, նոր դիրք մը ստեղծել՝ օրինական պաշտօնատեղիէն դուրս, իբրեւ թէ նոր աթոռ մը և նոր իշխանութիւն մը կազմուէր ազգին մէջ։ Արդէն իսկ աթոռէն դուրս, և անպատրաստ գետնի վրայ կազմուած կաթողիկոսութիւնը, շատ պակասներ ունէր իր գոյութիւնը հաստատելու, մինչ հակառակորդը կը պահէր բուն աթոռին տիրապետութիւնը։ Ազգն ալ միայն հաւատաւածով մը կը մասնակցէր ձեռնարկին, մինչ անդին հակառակորդն ալ, այսպէս թէ այնպէս, ոչ արհամարհելի հաւատուած մը ունէր իրեն հետ. հետեւապէս Բագրեւանդի գործիչները անհաւասար մրցման մը դուռ կը բանային իրենք իրենց։ Մեր տեսութեամբ շատ աւելի ճարտար, և թերեւս աւելի յաջող եղած կ'ըլլար Դանիէլեանց ձեռնարկը, եթէ Օսմանեան և Ռուսական պետութեանց հաւանաւորութեամբ, ամբողջ և ընդդիմադիր միաբանութեան ձեռնտուութեամբ, Կ-Պոլսոյ պատրիարքարանի պաշտպանութեամբ, և խումբ մը ազդեցիկ առաջնորդներու և վիճակներու ձայնակցութեամբ, ուղղակի Էջմիածինի մէջ Դաւիթի դէմ բանային պայքարը, և զայն հալածելէ ետքը բերէին Դանիէլը, և Մայր տաճարին մէջ տային անոր կաթողիկոսական օծումը։ Դաւիթը իսկապէս տապալած կ'ըլլային այն ատեն, և նպատակնին իրագոր-

ծած, ազգին և եկեղեցւոյն մէջէն ալ գայթակղութիւնք հեռացուցած ու խաղաղութիւնը հաստատած. մինչ իրենց գործով խռովութիւնը և պառակտումը չաղցուցած եղան։

**ԳՈՐԾԻՆ ՀԵՏԵՒԱՆՔԸ**

**2269.** Կը մնայ ձեռնարկին պատասխանատուութիւնը ճշդել, եղելութեանց մասին տեսութիւնները ամբողջացնելու համար։ Ինչ որ խնդիրէ դուրս պէտք է նկատել, Դանիէլի անձն է, որ գլխաւոր դերը և ձեռնարկին վայելումը ունենալով մէկտեղ, կրնանք ըսել թէ ամէնէն անմեղն էր այդ ձեռնարկին մէջ։ Դանիէլ բնութեամբ հեզ, ուղղութեամբ բարեմիտ, և ձգտումներով համեստ անձ մը վկայուած է ամէնէն, և թունդ Դաւիթեաններն ալ անոր անձը դատափետելու չեն յանդգնած։ Եթէ մեղադրելի բան մը պիտի դիտուի Դանիէլի վրայ, վերջին աստիճանի կրաւորական դիրք մը պահելն է, զինքն բոլորովին յանձնած ուրիշներու ձիրքերուն և ուրիշներու կիրքերուն միանգամայն։ Ինքն իր գործին վրայ իշխելու կարողութիւնը չունեցաւ, և ներեց որ իրեն անունով գործուին այնպիսի բաներ, որուն վատ հետեւանքները իրեն վրայ պիտի ծանրանային։ Սովորութիւն է իբրեւ գործին վարիչն ու տէրը, և հետեւաբար իբր տիրապէս պատասխանատու նկատել Ներսէս վարդապետ Աշտարակեցին, տակաւին 32 տարեկան երիտասարդ եկեղեցականը (§ 2257), որ ոչ յատուկ պաշտօն ունէր, և ոչ առանձին դիրք մը կը վայելէր, և բոլոր իր արժանիքը՝ իր ժիր գործունէութիւնն էր, և գլխաւոր պաշտօնը՝ ասոնց կամ անոնց կողմէն պատուիրակ նշանակուիլն էր։ Հետեւապէս Ներսէս գործի գլուխ ըլլալու բնաւ կերպարան չունէր։ Իրեն արդիւնքը չէր, եթէ առաջին անգամ Մայրաթոռի մէջ Դանիէլ կաթողիկոսութեան կ՚ընտրուէր, և ոչ ալ գործին տէրն էր, երբոր Տաճկահայք Դանիէլի ընտրութիւնը կը վաւերացնէին։ Եթէ վերջին անգամ Կ-Պոլսոյ մէջ կրնար ազդեցութիւն բանեցնել Յովհաննէսի պաշտօնանկութեան և Գրիգորի ընտրութեան մէջ, սակայն հակառակութեան մեծ շարժումը Էջմիածինի մէջ արդէն արծարծուած էր, ուր Ներսէս ներկայ չէր։ Հետեւապէս աւելի ընդարձակ շրջանակի մէջ պէտք է փնտռել վերջին ձեռնարկներուն պատասխանատուն, ոչ այս կամ այն անձը անհատաբար մեղադրելով, այլ գործին բնութեան մէջ տեսնալով եղելութեան սկզբնապատճառը։ Էջմիածին և Կոստանդնուպոլիս հաւասարապէս իրենց ընտրողական իրաւունքը, և իրենց կատարած ընտրութեան պաշտպանութեան համար կը պայքարէին, և մանաւանդ կը գրգռուէին Դաւիթին անհամբոյր բնաւորութենէն, և բռնակոն գործունէութենէն։ Այդ շարժումները ինքնաբերաբար կազմուած էին, առանց Ներսէսի թելադրութեան. Ներսէս միայն ճարտար և յաջող յանձնակատարի դերը կը վարէր, և անգամ մը որ պայքարը սկսած էր, չէր թողուր որ այն մարեր ու դադարեր, իրեն յորդորող և գրգռող ունենալով ամբողջ կուսակցութիւն մը, կազմ և պատրաստ կուսակցութիւն մը, որուն ինքն կը ծառայէր, և ոչ թէ զայն իրեն կը ծառայեցնէր։ Ասոր համար մենք չենք կրնար Ներսէսի վրայ բեռցնել գործին պատասխանատուութիւնը, այլ կրնանք իրեն պատշաճեցնել կանուխէն և ուրիշներէն սկսուած գործի մը ժիր գործադիր, անխոնջ աշխատող, և աննկուն հետեւող եղած ըլլալու դերը, մինչեւ իսկ գործին տէրն ու ենթական եղող՝ Դանիէլի ցուցած տկարութեանց դէմ մաքառելով։ Բագրեւանդի մէջ կատարուած իրողութեան մասին պէտք եղած տեսութիւնները փակելով, եղելութեանց շարունակութեան դառնանք։

**ԴԱՒԻԹԻ ԱՐԱՐՔԸ**

**2270.** Դաւիթի ընթացքն ու գործունէութիւնը Էջմիածինի մէջ բաւական կրճռոտ երեւոյթներ կը ներկայացնէ, երբոր նկատի առնենք իրեն ճոխ թղթակցութիւնը, և բաղդատենք իր մասին պատմուածներուն հետ, որոնցմէ ինչինչ յիշեցինք արդէն (§ 2263-2265)։ Դաւիթ երբ մէկ կողմէն սաստիկ բռնութեան գործերէն չէր կասեր՝ Մայրաթոռին ներքին վարչութեան մէջ և միաբանութեան հանդէպ, արտաքիններուն աչքին անշահասէր և խաղաղասէր անձի երեւոյթները կ՚ուզէր ցուցնել անհատնում թղթակցութիւններով, համակիրները քաջալերելու

և հակակիրները չահելու նպատակէն մղուած։ Զնայելով որ Ռուսական պաշտպանութիւնը իրմէ վերցած էր, ինքն չէր դադարեր Կովկասի կողմերը գտնուող Ռուս պաշտօնակալներուն հետ թղթակցիլ, և զանոնք իրեն կողմը անցընելու միջոցները գործածել. ասով դուրսիններուն ալ Ռուսաց հետ սերտ յարաբերութեանց մէջ ըլլալը կ'ուզէր ցուցադրել։ Այս մասին յոյժ շահագրգիռ և կատարելապէս հոգեբանական ուսումնասիրութիւն մը եղած կ'ըլլար, եթէ իւր գրուածներուն մասին (Դիւ. Զ.) կատարեալ աշխատութիւն մը կատարուէր, բայց մենք չենք կրնար այդչափ երկարել։ Միայն պիտի դիտենք որ հրատարակուած հաւաքածոյին մէջ երեւցող, և միաբանութեան կողմէն գրուած Դաւիթի նպաստաւոր նամակները, բնաւ չեն յարմարիր Դաւիթի դէմ յայտնուած չարժումներուն հետ. որով յայտնապէս կը հետեւի, թէ անոնք Դաւիթէ պատրաստուած, և հրապուրանօք կամ բռնութեամբ քանիներու ստորագրել տրուած գրութիւններ են։ Մինչեւ իսկ այդ գիրերէն շատերուն առանց ճիշդ թուականի գտնուիլը, անոնց պատրաստուած, բայց չստորագրուած ու չղրկուած ըլլալնուն նշան կրնայ նկատուիլ։ Ամէնէն աւելի Դաւիթի մտահոգութիւն պատճառող պարագան Խամսեցիին պատրիարքութիւնն էր, ուստի իրեն մեկրիններուն գրած ատեն ամէն անարգանք և նախատինք կը թափէր անոր վրայ, և Առ ընդհանուր ազգն ուղղուած յատուկ շրջաբերականով ալ՝ ամբարիշտ և կոյս և ստորախոտորեցեալ կը կոչէ զայն (Դիւ. Զ. 268), և կը յայտնէ, թէ չէ պատրիարք, այլ պետ և գլուխ չարեաց. կը հրամայէ, ուղղափառ ճանաչել զտէր Եփրեմ պատրիարք ազգին, այլ հրաժարելով հրաժարիլ ի Դանիէլէ ի կռապաշտ գաղանէ և գիտութենէ, և համաձայնել ընդ գլխաւոր հերետիկոսաց և ընդհանուր հերձուածողաց, ընդ Նեստորի, ընդ Մակեդոնի և ընդ Արիոսի (Դիւ. Զ. 567). և կը վերջացնէ, թէ հայրապետական իշխանութեամբ մերով, կապեցաք անլոյծ կապանօք և բանադրեցաք զանիծեալն յԱստուածոյ զնէ և զպիղծ Գրիգոր պատրիարքն Պոլսոյ՝ ի յերկինս և ի յերկրի (Դիւ. Զ. 569)։ Այդ լեզուն և այդ ընթացքը չարդարացներ հեզութեան և անձնուիրութեան կերպարանը, զոր յաճախ կը յեղյեղէ իւր գրութեանց մէջ, մանաւանդ եթէ յիշենք Մայրաթոռոյ միաբաններուն վրայ գործած բռնութիւնները (§ 2265)։

**2271.** Բանադրանքի և անէծքի զէնքը, Դանիէլի դէմ ալ գործածեց Դաւիթ, ինչպէս կը յիշէ 1802 մայիս 24'ին գրած մէկ թուղթին մէջ (Դիւ. Զ. 397). թէ հայրապետական բարձր իշխանութեամբ բանադրեցաք զնա և կապեցաք հոգևոր կապանօք յերկինս և յերկրի, զնոյն և զհամախոհս իւր (Դիւ. Զ. 396)։ Նկատողութեան արժանի է այդ գրութեան մայիս 24 թուականը, որ մէկ օրով առաջ է մայիս 25'ին Բագրեւանդի մէջ կատարուած օծումէն (§ 2266), և չորս օր յետոյ է մայիս 20'ի միաբանութեան բողոքագիրէն (§ 2265), որուն մէջ յիշուած է, թէ Դաւիթ ես գրեմ ի տեղւոյ փախչելոյ զբանադրանս վասն Դանիէլի, բայց դեռ հրաժարելոյ է զնա ի կաթեղ, ու գիտեմք զնա արարցաք (ՄՍՐ. 51)։ Այդ մերձեցումները կը յայտնեն, թէ Դաւիթ Բագրեւանդի վանքին մէջ կատարուելիք օծումին լուրը առնելով, ուզած է ինքն կանխել, և ըստ այնմ ձայն հանած է, բայց գործադրութիւնը չէ կանխած. վասնզի գրուած է, թէ բանադրանքը արձակած է, իմանալով իւր դէմ սահմանած բանադրանքը (ՆՐՑ. Ա. 25)։ Անկէ ետքն է, որ միաբանները ժողովելով (ՄՍՐ. 55) անէծք կարդացած է Դանիէլի դէմ։ Մենք չենք ուզեր կարեւորութիւն տալ այդ բանադրանքներուն, որ երկու կողմերէն ալ կիրքի արդիւնք էին, և ոչ օրէնքի, և կ'երեւի թէ ժամանակակիցներն ալ նոյնպէս կը մտածէին, որ ոչ մի կողմը բանադրանքի երկիւղածութեամբ իւր միտքէն ետ չէր մնար։ Գրիգոր պատրիարք Կ-Պոլսոյ մէջ եպիսկոպոսներով և վարդապետներով և իշխաններով ժողով կը գումարէր, և Սեբաստիոյ Գրիգոր եպիսկոպոսի ձեռքով բերուած Դանիէլի անդրանիկ կոնդակը (Դիւ. Ա. 151) հանդիսապէս կը հրատարակէր (ՊէՐ. 46)։ Տփղիսի մէջ ալ արտասովոր հանդիսաւորութեամբ, յուլիս 13'ին, Վարդավառի բարեկենդանի կիրակիին, կը կարդացուէին Ռուսաց կայսերական հրովարտակը երեք լեզուով, և Դանիէլի հայրապետական գիրը (ՆՐՑ. Ա. 27)։ Ներհակընդդէմ պայքարին

ԴԷՄԸՆԴԴԷՄ ՃԻԳԵՐ

մէջ՝ երկու կողմերն ալ միայն դրամի և ազդեցութեան զօրութեամբ գործը առջև կը մղէին։ Դաւիթ կ'ամբաստանէր Դանիէլը թէ Պայազիտի մէջ մնացած Մայրաթոռոյ սպասներն ու ապրանքները՝ կաշառքի գործածած է (ԴԻՒ.Զ.393), բայց միևնոյն բանը իրեն համար ալ գրուցուած է. և իր մտերիմը, Գէորգ Աղայէկեան, յայտնապէս կը խրատէր, թէ ուրտան ֆուղ ատնըն՝ չինայըն, ջէտտ պաշ լէր (ԴԻՒ.Ե.289)։ Դաւիթ այդ միջոցները թէ Ռուսական և թէ Տաճկական արքունիքներուն մօտ ալ կը գործածէր, բայց իր գլխաւոր ոյժը Երևանի խանն էր, որևոչ Պարսկական արքունիքին կ'անսար, և ազատօրէն Դաւիթէ կը շահուէր և Դաւիթը կը շահեցնէր։ Նա համարձակութիւն ունեցաւ Ռուսական կառավարութեան Դանիէլի համար միջնորդութիւնն ալ մերժել, զի երբ Ռուսաց մէկ էլչի էկն յՇրվանտա խանն, Բաղտասարեան Ջալալով էտ խանն (ԴԻՒ.Զ.396)։ Միւս կողմէն Դաւիթ կ'աշխատէր Կ-Պոլսոյ կառավարութեան մօտ ալ զօրանալ, քանի որ Դանիէլ անոր հողին վրայ էր և անոր հովանաւորութեամբ կը գործէր, և պէտք էր նախապէս այդ պաշտպանութենէն զրկել Դանիէլը։ Ուստի այս նպատակին գործածեց, բոլոր տրամադրելի նիւթական և բարոյական իր միջոցները, և իրօք՝ անով կրցաւ ապահովել իր երկրորդ յաջողութիւնը։

2272. Դանիէլեանք իրենց նպատակին հասնելու համար աշխատած էին Յովհաննէս պատրիարքը տապալել, որ Դանիէլը զօրացընէ. նոյն կերպով Դաւիթեանք ալ ձեռնարկեցին Գրիգորը տապալել, որ Դաւիթը զօրացնէ։ Կարծես թէ Գրիգոր ինքն ալ առիթ տուաւ իրեն տապալման, իր տարապայման խստութիւններով և աննպաստ հակառակութիւններով։ Նոյնիսկ Դանիէլի կուսակիցներ կը խոստովանին, թէ բու ան-խտէմ Բարօսս էրրօյ, Նաւբ և ՅէԲ օրէնէր է Հօսըն Բօրբօսէսս, և թէ ախտա Բանաբար խօչտանքէլ զԴաւիթեան, և զնծէցաշէլ Բանէխ նախտրէլ է տարրը։ Մինչև իսկ Դաւիթ անունին Բռա էԲ, հայատաճիկ խառնակ ատուգաքանութիւն մը յարմարցնելով, շաղափ

**ԽԱՄՍԵՑԻՆ ՊԱՇՏՕՆԱՆԿ**

շան կ'անուանէր Էնէգէթցին էփարողէ էսրամ, է մէջ էկեղեցւոյ պատրիարքարանին (ՊէՐ. 49)։ Էնէգէթցիին անունին բառախաղ կազմելու մէջ աւելի յաջողակ էր թերևս Գեղարդակիրը, երբ կը գրէր, թէ զԴաւիթն անօրէնս ամենայն նախատանօք ամբ է սուրբ աթոռն (ԴԻՒ.Ե.416)։ Խամսեցիին զանազանով, անոր խօսուածէն Դանիէլեաններէն ալ շատեր գայթակղեցան իր վրայ, խնդիրի նիւթ ըրին նաև Բագրևանդի գումարման մէջ կազմուած Վ.Տէր-օէնհօտօէ յայտարարութիւնը (§ 2267) ապագրութեամբ ցրուելը, իբր անարգանք պաշտօնին և աթոռին տէր եղող անձին դէմ։ Իրէպ հասան Դաւիթէ ղրկուած նշանաւոր գումարներ, Օսմանեան աւագանին շահելու և համոզելու, որ Գրիգոր պատրիարքութենէ հանուի, Դանիէլի համար տրուած արտօնագիրը ետ առնուի, Գրիգոր ու Դանիէլ էջմիածին աքսորուին, և Յովհաննէս նորէն պատրիարքութեան բարձրացուի։ Դանիէլեան ժիր գործիչներէն Մանուէլ վարդապետ միայն կը գտնուէր Կ-Պոլիս. և կարող չեղաւ վրտանգին առջևն առնել։ Խումբ մը գլխաւորներու կողմէ տրուած բողոքագիրին հիմնուելով, եպարքոսը հրամայած է Գրիգորի պաշտօնանկութիւնն ու աքսորը՝ և Յովհաննէսի պատրիարքութիւնը, երբ տակաւին սա Եւդոկիա կը մնար։ Գործադրութիւնը եղած է 1802 հոկտեմբեր 21'ին, Խաչի վեցերորդ երեքշաբթին, և երեկոյեան դէմ արևու մտնալէն ժամ մը առաջ (ԴԻՒ.Ա.155), Գրիգոր փոխադրուած է Բաղկեզան կամ Քասըքէօյ (ՊէՐ.50), և մինչև որ Յովհաննէս Եւդոկիայէ բերուի, փոխանորդ նշանակուած է Անդրէաս Գաղատիոյ եպիսկոպոս (ԴԻՒ Է.81), Զաքարիա Կաղզուանցիի աշակերտներէն և Յովհաննէսի աշակերտակից։ Անդրէաս անմիջապէս կը հրամայէ եկեղեցիներու մէջ Դաւիթի անունը յիշատակել նոր պատրիարքին անունին հետ, մինչ Գրիգոր Խամսեցիի պատրիարքութեանատեն Դանիէլի անունը կը յիշատակուէր իբր կաթողիկոս։ Անդրէաս բուռն միջոցներ ալ ձեռք կ'առնէ Դանիէլեանները հալածելու, այնպէս որ նոյնինքն Մանուէլ վարդապետ, որ յանկարծ լսած էր Խամսեցիին պաշտօնանկութիւնը, պէտք զգաց քանի մը

որ պահուրտի, և առաջին առիթով Նոյեմբեր 2'ին Կ-Պոլիսէ հեռանայ, և ապաւինի Ղրիմի կողմերը (ԴԻԻ. Ա. 156), նպատակ ունենալով այնտեղ գործել Եփրեմի օգնականութեամբ, և Կ-Պոլսոյ դեսպանական անձերէ ստացած յանձնարարականներու զօրութեամբ (ԴԻԻ. Ե. 293)։ Նոր պատրիարքը բերելու գացող հրաւիրակներ, փութացին իրենց պաշտօնը կատարել, և Յովհաննէս ընտրութենէն 40 օր ետքը դեկտեմբեր 1'ին Կ-Պոլիս հասաւ (ԴԻԻ. Ե. 294), և 3'ին չորեքշաբթի օր, շքեղ հանդիսիւ և պաշտօնի ձեռնարկեց (ՊԸՐ. 49)։

2273. Նկատողութեան արժանի կը դատենք քաղել այստեղ, Դաւիթի ուղղուած Կ-Պոլսեցւոց նոր հանրագրութիւնը, զոր Յովհաննէս փութացած է կազմել տալ մայրաքաղաք հասնելէն քիչ օր ետքը, վասնզի 1802 տարւոյ դեկտեմբերի թուականը կը կրէ (ԷՋՄ. Բ. 53)։

ՆՈՐ ՀԱՆՐԱԳՐՈՒԹԻՒՆ

Մեծ ժողով մը կը գումարուի ու դրան արքունեաց Աստուածածնին մայր եկեղեցւոյ, որուն ներկաներուն թիւը յիշուած չէ, բայց հազարի մօտ պէտք է ըսել, եթէ 588 ստորագրութիւններ գրուած են հանրագրութեան ներքեւ, ընդարձակ թուղթի մը վրայ, երկու ու քառորդ մեթր երկայնութեամբ (ԷՋՄ. Բ. 50)։ Եկեղեցական և աշխարհական ամէն դասակարգերէ անձեր կը գտնուին ստորագրութեանց կարգին, որ կը ցուցնէ թէ Յովհաննէս կրցած է ընդհանուր համակրութեան շարժել Դաւիթի համար։ Սուրբ Գիրքէ վկայութիւններով զարդարուած և շողոքորդ ըսելու չափ շքեղ նախաբանէ մը ետքը, Դաւիթ կը հռչակուի հոգեւոր տէր մեր ամենընտրելի սրբազան արքեպիսկոպոսապետ կաթողիկոսն, որ Գրիգորի օրով իրեն դէմ եղած ցոյցերուն ըստ Յոբայ համբերութեամբ տարած այսքան վշտաց և փորձութեանց, բայց արդէն անկէ ձերբազատ և ընտիր գտաւ։ Կը յաւելուն, թէ ընծայեալ տէրդ արքեպիսկոպոսապետ Դաւիթ սրբազան կաթողիկոս ընտրանօք եկեղեցւոյ մերոյ գլխաւոր և ճանաչեալ, և հաստատ հաւանութեամբ ընդունին ճշմարիտ կաթողիկոսութեան։ Իսկ ինչ որ յայս մեծ տարրական միջոցին յանուանէ Դրէգոր պատրիարքին երեւցան, տարածեալ և գրեալ թուղթք՝ իբր անընդունելի կը մերժեն. միանգամայն յանուն Դանիէլ եպիսկոպոսի ուրեք գրեալ թուղթ գտանին կոնդակաց անուամբ, կ'որոշեն է հուր արկանել և այրել։ Հանրագրութեան ներքեւ առաջին ստորագրողն է Յովհաննէս արքեպիսկոպոս և շնորհիւ տեառն պատրիարք Կոստանդնուպոլսոյ, որուն կը հետեւին 10 եպիսկոպոսներ, Գալուստ Նուիրակ և Անդրէաս տեղապահ, Պետրոս ու Յակոբ Երուսաղէմի, և Գէորգ ու Ստեփանոս Էջմիածինի միաբաններ, և առաջնորդներէն Յակոբ Թէքիրտաղի, Կարապետ Կեսարիոյ, Գրիգոր Սեբաստիոյ և Բարսեղ Նարեկայ։ Ստորագրող վարդապետներ 14 են, որոց կը հետեւին կարգաւ մայրաքաղաքի քահանաներ. Մայրեկեղեցւոյ 37, Սամաթիայի 30, Գալաթի 22, Խասքէօյի 8, Ղալաթիոյ 26, Օրթաքէօյի 6, Իւսկիւտարի 13։ Աշխարհականներուն առաջին կարգին կը ստորագրեն տիրացուներ, դպրապետներ և վարժապետներ 25. անոնցմէ ետքը կու գան ամիրաներ 36, և եկեղեցիներու իշխաններ 48։ Վերջէն կը ստորագրեն արհեստաւոր դասակարգեր. Գույումճու 16, Գաբամաճի 11, Ալաճաճի 14, Ճէվահիրճի 19, Սրմաքէշ 10, Տօղրամաճի 8, Քիւրքճի 11, Սօֆճի 3, Ճիզմէճի 4, Օթուրաքճի 6, Թիւլպէնտճի 47, Պասմաճի 13, Քէրէստէճի 16, Քալբաքճի 9, Չիլինկիր 10, Բազարճի 10, Սահաթճի 10, Սէտէֆճի 3, Քավուքճի 2, Մինթանճի 4, Պարխանաճի 3, Գազէզ 7, Թէրզի 15, Պէրպէր 11, Էնքսէրճի 15, Էսկիճի 3, Մէստճի 9, Ֆինճանճի 5, Քէսէճի 5, Գազանճի 9։ Ամէնուն ալ անունները կը յիշուին, ոմանց ազգանուններն ալ, գլխաւորապէս տիրացուներու և ամիրաներու և իշխաններու (ԷՋՄ. Բ. 54-59), որ կրնայ հետաքրքրական ըլլալ նոյն ընտանիքներէ եղողներուն։

2274. Դանիէլ այդ միջոցին կը մնար Բագրեւանդ կամ Ալաշկերտ գաւառը, Իւչքիլիսէ կամ Ս. Յովհաննէս վանքը, ուր հաստատուած էր իւր հայրապետանոցը, միասին ունենալով եպիսկոպոսներ և վարդապետներ, և գլխաւորապէս Ներսէս Աշտարակեցի վարդապետ՝ անխոնջ գործիչը։ Իւչքիլիսէի դիրքը տեղական գործունէութեան դիւրութիւն չէր ընծայեր, գլխաւոր գործերնին էր

ԴԱՆԻԷԼ ՅԷՋՄԻԱԾԻՆ

թղթակցութիւններով ամէն կողմերու հետ յարաբերութիւններ կազմել, ոչ միայն ազգային, այլեւ պետական շրջանակներու հետ։ Կ'աշխատէին վառ պահել Ռուսական արքունիքին համակիր պաշտպանութիւնը, շահիլ՝ եթէ հնար ըլլար՝ Երեւանի խանը, քաջալերել Կ-Պոլսոյ պատրիարքութիւնը և Տաճկահայոց վիճակները, սրտապնդել Մայր աթոռոյ միաբանութեան Դաւիթի դէմ հաստուածը, լուրեր տալ և լուրեր առնել Ռուսիոյ և Թուրքիոյ մէջ կատարուած նպաստաւոր ճիգերուն վրայ։ Բազմաթիւ թըղթակցութիւններ լոյս տեսան վերջին ատեններ (ԴԻՒ. Ե. 240-289), որ այդ յարաբերութեանց մանրամասնութիւնները կու տան։ Յիշեցինք արդէն թէ Դաւիթեանց գործունէութեան նպատակն էր Դանիէլն ու Գրիգորը Էջմիածին փոխադրել և Դաւիթին իշխանութեան ներքեւ դնել, գուցէ և ճարտարութեամբ մը մէջտեղէն վերցնել։ Առ այս պէտք եղածը սկսած էր գործադրել Անդրէաս՝ դեռ Յովհաննէսը չեկած, և պէտք եղած հրամանները հաղորդուած էին Պայազիտի փաշային, ուր փոխադրուած էր և Խամսեցին, Դանիէլի հետ աքսորուելու համար։ Դաւիթ որ եղածներէն լուր առած էր նոյեմբեր 10'ին (ԴԻՒ. Է. 6), Գրիգորի տապալուելուն և Դանիէլի մերժուելուն լուրը ստացած, փութաց Պայազիտ ղրկել Շիրայի պէկ անուն իշխանը՝ Երեւանայ Մահմատի, և Քօլեան Աբրահամ Տօթեւացի եպիսկոպոսը՝ իր կողմէն, որ Դանիէլը բերեն, Օսմանեան կառավարութենէ տրուած հրամանին համեմատ (ԴԻՒ. Ա. 156)։ Առնոյ նախ Պայազիտ կը հանդիպին, և փաշան հաճեցուցեալ՝ առնուն հրաման, և Ուչքիլիսէի վանքը գալով, ընդունեցեալ զեկ ժամ մի, Դանիէլը ճանպայ կը հանեն խորամանգովն հանդերձ (ԴԻՒ. Ա. 157)։ Հազիւ Դանիէլ խնդրագիր մը կը պատրաստէ Աղեքսանդր կայսեր ուղղուած 1802 նոյեմբեր 23 թուականով, ուր կ'ըսէ թէ նոյն օր Պայազիտի Քրդերն՝ գնոց գնով վաճառեալ զմեզ՝ մատնեաց կողմանց եկողներուն ձեռքը, հանդերձ ընդ իս եղելով հոգեւորականօք և մարմնաւորականօք (ԴԻՒ. Ե. 293), ուր թէպէտ յիշուած է Գրիգոր պատրիարքն ալ (ԴԻՒ. Ե. 292), սակայն այլուր գրուած է, թէ նա այն օրերը հիւանդացած Կարս կը մնար, և է յառաջիննոյն գոլոց է (ԴԻՒ. Է. 7)։ Այստեղ կողմնօք բառը, բանակեամբ պիտի իմանանք, զի շղթայի յիշատակութիւնք չենք գտներ, մանաւանդ թէ Քօլեանի հրահանգ տրուած էր սիրով և պատուով վարուիլ Դանիէլի հետ, մինչեւ իսկ խոստանալով յանձնել նմա զաթոռն հայրապետական, եթէ ինքն յօժարեսցի (ՄՍՐ. 56)։ Վանքէն ելած օրերնին գիշերը կ'օթեւանին Արծափ, միւս գիշեր Հաղուէիս, ուր դիմաւորելու կու գայ Սիմէոն եպիսկոպոս աթոռակալ քաղաք զԻնակրաս է զԵւաղարշիան։ Երրորդ օր Էջմիածնի մօտ Քիւլթափէ կոչուած տեղը կը դիմաւորեն Անդրէաս և Յովհաննէս եպիսկոպոսներ և Սահակ Դարբինեան վարդապետ, և ընկալեալ բերեալ մածանէն է Վաղարշապատ, և Դանիէլը իր հետեւորդներէն զատելով՝ մածեալ է ներքոյ Վաղարշապատ վրան ունեցածները կը գրաւեն, և ամէն հաղորդակցութենէ արգելեալ, կացուցեալ պահապան զՄկրտիչ շահբէն Պալաղեան. և այսպէս կը մնայ յաւուրս երեսուներկու այսինքն նոյեմբեր 25'էն, որ է Էջմիածին մտնելուն օրը (ԴԻՒ. Ա. 157), մինչեւ դեկտեմբեր 26։ Էջմիածին հասնելուն օրը ուրիշ տեղ նոյեմբեր 27 գրուած ըլլալը (ԴԻՒ. Զ. 680), Ե և Է թուատառերու շփոթութեան պիտի վերագրենք։

**ԴԱՆԻԷԼ ԲՌՆԱԴԱՏԵԱԼ**

**2275.** Երբ Դաւիթ խիստ պահպանութեան ներքեւ կը պահէր Դանիէլը, միւս կողմէն անձամբ ներսի Վաղարշապատ երթալով և անոյշ խօսքերով կ'ուզէր զայն իրեն հնազանդեցնել, որպէսզի նա ձեռնթափ լինի, և ինքն ապահովուի։ Իրաւ ալ կրնար այդ միջոցին յաջողիլը յուսալ, զի Դանիէլ ինքնիրեն մնացած սաստիկ զոհողութեանց յանձնառու ըլլալու չափ զիջող էր, հանդարտագնաց և երկեղած վհատեալ էր քարշեալ (ՄՍՐ. 57), և բոլորովին հեռու էր ամէն ձգտումներէ։ Նոյնիսկ իր արգելական կացութեան վրայ ձայն հանող չէր, և ուրիշներն էին որ բողոքի կը համարձակէին։ Քօլեան գլխաւորապէս՝ որ Դաւիթի կողմանէ սէր և պատիւ էր խոստացած, կը բողոքէր թէ սուտ գտանիմ ի բանս իմ և ամօթագեաց (ՄՍՐ. 56)։ Երեւանի մեծամեծներ նոյնիսկ խանին դիմելով, անոր կողմէ Դաւիթի գրել տուին, որ

Դանիէլը [illegible] պատուով պահէ [illegible]: Դաւիթ [illegible] այս միջամտութեանց, և վերջապէս պայման դրաւ, որ Դանիէլ գրաւոր կերպով հրաժարի կաթողիկոսութեան անունէ, դատապարտէ իւր ընթացքը, անվաւեր և ապօրինաւոր խոստովանի իւր օծումը, զղջում յայտնէ իւր ըրածին վրայ (Դիւ. Ա. 158): Դանիէլ այդ ալ յանձնառու եղաւ կատարել, և 1802 դեկտեմբեր 31 թուականով [illegible] մը ստորագրեց, որ աւելի [illegible] կրնայ ըսուիլ, վասնզի եղելութիւնները յիշելէ ետքը կը յաւելու, թէ [illegible] (Դիւ. Ե. 298). մինչ յայտնի է որ կամովին եկած չէր, այլ բռնի բերուած էր (§ 2273): Սոյն ոճով կըրկին և կրկին կը հերքէ, կը դատապարտէ, կը նզովէ իւր ըրածները, և կը փակէ յայտարարելով, թէ [illegible] Ամենայն Հայոց, և [illegible]: Եւ իրօք 12 եպիսկոպոսներու ստորագրութիւններ դըրուած են նոյն գրին ներքեւ, որք են աթոռակալ Սիմէոն, ժամօրհնող Ալեքսիանոս, գրագիր Անդրէաս, Յովակիմ, Ստեփանոս, Աստուածատուր, Բարսեղ, միւս Ստեփանոս, Յովհաննէս, Աբրահամ, միւս Աբրահամ և Գէորգ եպիսկոպոսներ (Դիւ. Ե. 299): Այդ գրութեան վրայ 1813 տարւոյ աղջի օրէն, սկսան դիւրութիւններ ընծայուիլ Դանիէլի, դասին մէջ՝ տեղ, ոմանց երթեւեկի արտօնութիւն, երբեմն Դաւիթի սեղանակից, բայց ազատ բնակութիւն չտրուեցաւ, և Մեծ Ղազարապատին մէջ փակուած մնաց (Դիւ. Ա. 161): Ասոր ալ պատճառ կրնանք ընդունիլ, Դաւիթի ինքզինքը բոլորովին ապահով չզգալը, զի եթէ Դանիէլ համակերպեցաւ, այլ Դանիէլեանք ոչ, որոնք բնաւ կարեւորութիւն չտուին Դանիէլի հրաժարագիրին, որ պարզապէս բանտարկեալ անձէ մը բռնադատութեամբ առնուած ստորագրութիւն էր, և այնպէս ալ նկատուեցաւ: Իրօք ալ յայտարարութեան մէջ գործածուած տարապայման և տարօրինակ ոճը, Դաւիթի կողմանէ պատրաստուած գրութիւն մը ըլլալը կը մատնէ:

2276. Դանիէլի պաշտպաններուն և անոր անունով գործողներուն գլուխը կը գտնուէին Եփրեմ եպիսկոպոս Ռուսիոյ առաջնորդ, և Յովհաննէս Գեղարդակիր Տփղիսի առաջնորդ: Մանուէլ Կիւմիւշխանացին ալ (§ 2272) Եփրեմի մօտ կը գտնուէր Նոր-Նախիջեւանի մէջ, ուր եկած էր Կ-Պոլիսէ՝ մէկտեղ բերելով կարեւոր վաւերագիրներն ալ: Ասոնց հաւանաւոր և օգնական էին Լազարեան եղբայրներ, Մինաս և Յովակիմ, Ռուսաց արքունիքին առջեւ ազդեցութիւն վայելող իշխանաւորներ: Ամէնքն ալ իրենց ջանքերը դադարեցուցած չէին, երբոր Էջմիածինի մէջ հրաժարագիրի անցքերը կը կատարուէին: Աղեքսանդր կայսերէ ալ հրահանգ տրուած էր Կովկասեան գաւառաց կուսակալութեան, պէտք եղած դիմումներն ընելու Երեւանի խանին մօտ, որպէսզի Դաւիթ հեռացուի և Դանիէլ կաթողիկոս հաստատուի: Դաւիթ ալ անգործ չէր, և Դանիէլի վրայ նոր բռնութեան առիթ ստեղծելու համար՝ տեղեկութիւն տուած էր խանին, թէ պարտաւորուած է Դանիէլէ հաշիւ պահանջել այն գումարներու և գոյքերու համար՝ զորս գանձած և իւրացուցած և ծախսած էր իբր կաթողիկոս, մինչ անոնք Էջմիածինի իրաւունքն էին: Դաւիթի հետ խառնուած էր Ներսէսի ալ անունը, իբր [illegible]: Դաւիթի այդ ջանքերը իմացան Երեւանի Հայ իշխանաւորներ, և [illegible] կամ կառավարական գործակատարին միջնորդութեամբ աղաչանքներ ու ընծաներ ու գումարներ մատուցանելով խանին, յաջողեցան հաճեցնել, որ Դաւիթին գրէ թէ [illegible]: Մինչդ այս օրերուն 1803 յունուար 5'ին, Ծրագալոյցի օրը, Երեւան կը հասնի (Դիւ. Ա. 163) Թէմուրազ Վրացի իշխան, Օրբելեանց Վրացի ճիւղէն, Թէմրազ Էչիկաղասի իշխանին որդին, որ Ռուս կու-

ՌՈՒՍԻԱ ՄԻՋՆՈՐԴ

*տակային և Վրացի իշխանաւորներուն անուանով Մահմատի առաջարկեց, ղէ ընկեցէուղիւուէյ յոլնոայն՝ նօթօօյէ ղինանէլ* (ՄՍՐ. 57)։ *Մահմատ չկրցաւ նոյնրնդնոյն առաջարկը մերժել, որ Ռուսական կառավարութեան աջակցութեամբ կը ներկայացուէր, և չկրնալով Դաւիթէ և անկէ առցած և առանալիք չահերէն ալ հրաժարիլ, իբր ելից միջոց փոխադարձ առաջարկեց, որ Ռուսները հաւանին և օգնեն որպէսզի նորէն իրեն պաշտօնին մէջ հաստատուի Կարսի բդեշխ Շէրիֆ փաշա* (Դիւ. Ա. 164), *որ ղոոփնէուէ է մօհ յՕսմանեան Դրանէ, և Ախըլցխայէ ֆոխոպէոյ ապաւինած էր Մահմատին մօտ։ Շէրիֆ նկատուած էր իբր Ռուսաց ոխերիմ թշնամի* (ԵՐՑ. Ա. 31), *ասով մէկտեղ դեսպանը յուսադրութիւն յայտնեց, գործը Ռուս կառավարիչին հաւանութեան ներթարկելու, և մինչ ցօոօոօ ընֆէոօօն պատասխանը տալու ալ խոստում տուաւ։ Մահմատ այդ միջոցին Դաւիթն ու Դանիէլը Երևան բերել տուաւ, և Էջմիածինի մէջ Դաւիթի սենեակները կնքել տուաւ, որպէսզի փոխանցումը դիւրացնէ։ Պայմանեալ օրերը լեցուեցան, բայց Ռուս կառավարիչէն ոչ պատասխան հասաւ, և ոչ զինուորական օգնութիւն։ Մահմատ ալ մտածեց, թէ ոչ ընէնֆօմէօ ըն նօէօ և խոֆըֆօյէ, ուստի մերժեց դեսպանին առաջարկը, և Դաւիթը արտօնեց վօրէւ ըոօ ոօօընոյն ղէօր էչխօնօօֆէօն։ Դեսպանն ալ ստիպուեցաւ Տփղիս դառնալ, որ գործին ընթացքը բացատրէ, և պէտք եղած կարգադրութիւնները փութացնէ* (ՄՍՐ. 58)։

**2277**. *Դանիէլի հետ Երևան եկած էին Խամսեցին Գրիգոր և Աշտարակեցին Ներսէս, որոնք Դաւիթէ՝ ֆչօնոլէ խօմօէցէ Գրէֆօրն և լէօէ Ներսէսն կոչուած են* (Դիւ. Է. 47)։ *Ասոնք մտածեցին, դեսպանին հետ Տփղիս դառնալ, և Ռուսական կառավարիչին հետ գործին յաջողութեան աշխատիլ, Դանիէլին ալ նոյնը թելադրեցին, որով թէ գործը պիտի դիւրանար և թէ Դաւիթի ձեռքէն ազատած պիտի ըլլար։ Երկուքն ալ յօրդորէին և ոօէղէին ղինանէլ, բայց է ղոօնօօւ նօրօ յօնյն՝ որոշեցին իրենք ֆնօւ ընօ ղէօղօնէն։ Ասոնք*

ԱՊԱՐԴԻՒՆ ԵԼՔ

*այնպէս դատած են, թէ Խամսեցին և Աշտարակեցին ոչնէւ էղֆէցէն ժէնէլ և հեռանալ Դանիէլի մօտէն, հոգալով է ծօղօղրօմ օնյօնօ ֆօօնօւ* (ՄՍՐ. 59)։ *Սակայն պարագաները լաւ զննելով անհիմն կը նկատենք այդ մեղադրանքը, և յարմարագոյն կը սեպենք ըսել նախնական յիշատակագիրին հետ, թէ որոշեցին երթալ է ղէմօց Դօնէէլէ, էֆրէօ յօրղօրէւ օօ կօօօօկոլն՝ կօղօրմօն խընղրօյ խօնէն Սրէօօնօյ, որով պիտի ապահովուէր Դանիէլի կաթողիկոսութիւնը* (Դիւ. Ա. 165)։ *Դաւիթ ալ կը գրէ, թէ Դանիէլ ղԳրէֆօրն և ղՆէրօէօն յօօղօրէէօց է Թէֆլէղ, օօ է լցօօցօնէւ ղֆօօօմօւ Բէօր կօմ էօր* (Դիւ. Է. 47), *իբր թէ ինքն փառամոլ չըլլար, մանաւանդ թէ փառամոլութիւնը բռնաւորութեան հասուցած չըլլար։ Դանիէլի երթալ չուզելուն պատճառ կրնանք նկատել քիչ մը առաջ տուած հրաժարագիրին հաւատարիմ մնալու խիղճը. բայց կրնայ ալ ըլլալ որ Մահմատ Դաւիթէ գրգռուելով ներած չըլլայ որսը ձեռքէն փախցնել։ Արդէն Դաւիթի պայքարող ուղղութիւնը՝ իւր իսկ գիրերէն կը յայտնուի։ Որն և ըլլայ բուն պատճառը, 1803 յունուարի վերջին օրերը Խամսեցին և Աշտարակեցին դեսպանին հետ Երևանէ մեկնեցան, 31՚ին Տփղիս մտան, և փետրուար 1՚ին ներկայ գտնուեցան իշխան Պօղոս Դեմետրեան կամ Պաւել Դիմիտրիչ Ցիցիանով մեծ կուսակալին հանդիսական մուտքին։ Գեղարդակիրի գլխաւորութեամբ անոր ներկայացան, եղելութիւնները բացատրեցին, և պատասխան ստացան, թէ ընօրհէօ ժէծօղըր կօյօէր ֆօօբօվ օնէմ կօօօրէւ ղէնղէր յէր, յօջօրղէցօօցօնէլով ղԴօնէէլն յօբօօ կօթօղէկօօօբէօն* (Դիւ. Ա. 165)։ *Գործին աւելի ոյժ տալու համար Աշտարակեցին անցաւ Նոր-Նախիջևան՝ Եփրեմի և Մանուէլի գործակցելու, մինչ Խամսեցին Տփղիս մնաց Գեղարդակիրին մօտ* (ՄՍՐ. 59)։ *Դաւիթ քիչ մը ես Երևանի մէջ ուշացաւ, Մահմատի հետ իւր գիրքը ապահովելու համար։ Իւր գրգռութեամբ խօնն բօրկօցէօւ է վէրօյ Դանիէլի, կօլէօւ էօ զայն է ժէջ բէրղէն է ղէղօհօջ* (Դիւ. Է. 76), *վասնզի Թիմուրազ երկրորդ անգամ եկած էր Դանիէլին կաթողիկոսութիւնը պահանջել, գլանալով մէկտեղ Շէրիֆին օգնելու պայմանը։ Իսկ խանը*

կրկին մերժեց պատճառելով, թէ դատ ուրուք հետևեալ չկամեցայ է քեզ բերել զառաջարկեա-բերանն մեր, մի եւս չեմ համեցայ կատարել չկամ-յեր. աւելցնելով ալ՝ թէ Դաւիթի պաշտօ-նանկութիւնը հակառակ կ'ըլլայ Պարսից շա-հին և Օսմանցւոց սուլտանին հրովարտակ-ներուն (ԴԻԻ. Է. 84)։ Այսպէս Դաւիթ Մահ-մատի պաշտպանութեամբ զօրացած, պարս-կական Նէվրուզն ալ Երևանի մէջ կառա-րելէն ետքը, 1803 մարտի վերջերը Էջմիա-ծին դարձաւ, ապրիլ 5'ին զատիկը տօնե-լու։ Իսկ Դանիէլը, կը գրէ ինքն, խանն պատեալ է յետս մեր, զատուցելոց ըստ կամս ա-նել ընդ նմա, և զարժել զեւրդ և զէրեմ։ Ասոր վրայ Դաւիթ զէկեղն և զմաւրանէ առ-եալ Դանիէլէն, և կորզընկեց արարեալ, կը փակէ ի մեծամ ...էբր ի դեղահօջ, և զայս կը կոչէ բանտեն գուբ (ԴԻԻ. Է. 104), երբ կը սպառնայ ալ, որ եթէ ոչ հանդարտեցուցե զ'է Թէֆլէզ եղեալ ...էր մինչև է տաս և հինգ օր, ...է զրկել է մեռանելն և ...ժել զոյժ (ԴԻԻ. Է. 114)։

**2278.** Որչափ և Դաւիթ կաթողիկոսու-թեան տիրացած էր, սակայն հանդարտու-թիւն չունէր, զի Դանիէլ-եան գործիչներ, Եփրեմ և Յովհաննէս և Գրիգոր և Մանուէլ և Ներսէս՝ չէին

ԴԱՆԻԷԼ ՆԱԽԱՏԵԱԼ

դադարեր Ռուսական կառավարութեան մօտ աշխատիլ, որպէսզի Աղեքսանդր կայսերէ կաթողիկոս ճանչցուած Դանիէլը, իրօք ա-թոռին տիրանայ։ Դաւիթ այնպէս կը կար-ծէր, կամ գոնէ կարծել կը ցուցնէր, թէ անոնք Դանիէլի հրահանգով կը շարժին, թէպէտ լաւ պէտք էր գիտնար թէ Դանիէլ, եթէ իրեն մնար, շատ հեռու էր այդ գոր-ծունէութենէ. և եթէ ուզէր ալ բան մը ընել, անհնարութեան մէջ էր, ամբողջ փակուած և խիստ հսկողութեան ներքև ամէն յարաբերութենէ զրկուած ըլլալով։ Ուստի միայն ձեւակերպութիւն էր 15 օր-ուան պայմանաժամով պահանջել, որ վերո-յիշեալ գործիչները արգելէ, և բուն նպա-տակն էր Դանիէլի անձին վրայ բռնանալու առիթ ստեղծել, ինչպէս որ ալ կատարեց։ Վանքի մէջէն 25'ին, Հոգեգալստեան եր-կուշաբթի օրը, խառնիւ անարգելէ և նախա-տելէ, և յոյժ տառր ցեղոյ Ռուսաց յաւէտ յօգնաւորեան տեղ՝ խօսքերով հեգնելէ ետքը, հրապարակաւ նախ խուզել, յետոյ գերծել կու տայ Դանիէլի մօրուքը, և աւելի խիստ բանտարկութեան կ'ենթարկէ (ՄՍՐ. 59), զոր ինքն ի դահճապետ հանգէտ կացուցեալ ապրիլ կը կոչէ, և մեծանձնութիւն կ'ուզէ ցուցնել 15 օրուան պայմանաժամը մինչև 60 և 70 օր յապաղած ըլլալը (ԴԻԻ. Է. 200)։ Դաւիթ այդ առթիւ ռամկապ ֆոլխա և գաւազան ալ պատրաստել տուած էր Դանիէլը տան-ջելու. այլ չհամարձակեցաւ գործադրել, տեսնելով որ ամենեցուն խաժամէցն դէմ է տիրալից տեառնէն (ՄՍՐ. 60)։ Հետեւապէս լոկ կեղծիք պէտք է ըսել կարծեցեալ զղջման ձեւերը, և քաղցրութեան վար-մունքները, զորս ոմանք կ'ուզեն բարձրա-ցընել (ԴԻԻ. Ա. 173)։ Որովհետև այդ միտ-քը ոչ մի կերպով չարդարանար Դաւիթի գրութիւններէն, որոնց մէջ երբեք առանց նախատալից մի բառի չյորջորջեր Դանիէլի ա-նունը. զորօրինակ ժանտաժուտ (ԴԻԻ. Է. 87), անպաման (ԴԻԻ. Է. 88), Նենգաւոր, խարդաբէն (ԴԻԻ. Է. 104), ամբարտաւան (ԴԻԻ. Է. 113) և նմաններ։ Անխտիր կը բռնանայ Դանիէլի համակիր կարծուածներու վրայ, հեռաւոր-ներու ալ բանադրանքներ կը տեղացնէ չա-փազանց մոլեգնելու ոճով մը, ինչպէս Աղ-բակի (ԴԻԻ. Է. 114), և Ս. Կարապետի (ԴԻԻ. Է. 148), և Բաղեշայ (ԴԻԻ. Է. 170), և Մշոյ (ԴԻԻ. Է. 174), և ուրիշ վիճակներու առաջ-նորդներուն։ Դաւիթ միևնոյն ատեն շա-րունակ Ռուսաց կայսեր և կուսակալին և պաշտօնէից կը դիմէր իւր կարծեցեալ իրա-ւունքը պաշտպանելու, և իւր միաբանու-թեան անունով գրուած նամակներ կը տե-ղացնէր. մինչև իսկ պահ մը Աղեքսանդր կայսրն ալ Ցիցիանովէ լսել տեղեկութիւններ կ'ուզէր, թէ արդեօք Դանիէլ պատրիարքը երբեմն Հայոց ազգին անհաճելի է՞, կամ թէ զայն հայրապետական գահէ վրայ դահելը՝ երկրի համար նշանաւոր անյարմարութիւններ պիտի ծագեցնէ՞ (ԵՐՑ. Ա. 29)։

**2279.** Ռուսական կառավարութիւնը երբոր Հայոց կաթողիկոսութեան խնդիրով կը զբաղէր, աւելի ընդարձակ նպատակ ու-նէր, Հայաստանի գաւառներուն մէջ իւր տիրապետութիւնը ընդարձակել, ինչպէս արդէն Վրաստանի գաւառները իւրացուցած

էր։ Բայց պէտք է ընդունիլ, թէ այնպիսի անկարգ և անտանելի վիճակի հասած էր Պարսկական իշխանութիւնը, կամ լաւ ևս խաներու անիշխանութիւնը, որ մեծ բախտ պիտի ըլլար կանոնաւոր տիրապետութեան փոխանցումը, և երկրին բնակչութիւնն ալ իբր նախախնամութիւն կը նկատէր անոր իրագործումը։ Դաւիթ Պարսից խանէն պաշտպանուած, և Դանիէլ Ռուսական կայսրէն հովանաւորուած, այդ զգացումներուն անձնաւորութիւններն էին դարձած։ Օրիի ջանքերը (§ 1846) և Սիմէոնի ձգտումները (§ 2096), շատոնց արմատ ձգած էին Հայ սիրտերու մէջ։ Ռուսական ծրագիրը ընդարձակ էր, և իւր նախապատրաստութիւնները կը պահանջէր, ուստի Ցիցիանով, որ անոր գործադրութեան համար ղրկուած էր, հանդարտօրէն կը գործէր. 1803 տարին ուրիշ միջադէպներ տեղի չունեցան, և միայն 1804 տարեմուտին սկսան զինուորական շարժումները։ Յունուար 3'ին Ցիցիանով գրաւեց Գանձակ կամ Կէնջէ քաղաքը (ԴԻԻ. Ա. 174), և հոն թողուց Գեղարդակիրը, որ իրեն կ'ընկերանար։ Անկէ մեծ պատրաստութեամբ գնաց լեռնաբնակ Լեզգիներուն վրայ, [illegible] խանաւորն. անցաւ Փորու և Իմէրէթու կողմերը, Դատիանու երկիրին մէջ Ռուս գունդեր թողուց, և մայիս 5'ին Տփղիս դարձաւ, Երեւանի կողմը արշաւելու համար (ԴԻԻ. Ա. 175)։ Մահմատ ահաբեկած դեսպաններ յղած էր, և Ռուսաց հովանաւորութեան ներքեւ անցնիլ յանձնառու եղած, եթէ զինքն պաշտպանեն Պարսից Ֆէթհալի շահին դէմ, որ Երեւանի վրայ կը քալէր. ըմբոստ խանը նուաճելու և թշնամի Ռուսները վանելու կրկին նպատակով։ Ցիցիանով Մահմատէ իբր նշան անկեղծութեան պահանջած էր, որ Երեւանի բերդը իրեն յանձնուի, և ինքն քաղաքէն ելնէ, ինչ որ Մահմատ չէր կատարած։ Ուստի Ցիցիանով լեռնականներու պատերազմներէ ետքը մայիս 5'ին Տփղիս դառնալով, 28'ին բանակը Երեւանի կողմը ճամբայ հանեց, և ինքն ալ ետեւէն ուղեւորեցաւ դէպի Ապարանեան դաշտը։ Մահմատ ամրացած էր արդէն Երեւանի մէջ ռազմամթերքով և առատ պաշարով, դաշտը պարպած էր բնակչութենէ, Դաւիթն ալ Էջմիածինի միաբաններով և հարստութիւններով Երեւանի բերդը փոխադրած, Դանիէլն ալ միասին առնելով։ Պարսից յառաջապահ գունդը Աբաս Միրզա արքայորդւոյն հրամանատարութեամբ Թաւրիզէ մեկնելով՝ յունիս 1'ին Զանգուի այգեստանը բանակեցաւ, Երեւանի բերդին վրայ յարձակեցաւ առանց յաջողութեան, երբ գումարտակ մըն ալ Էջմիածինի վրայ կը քալէր։ Վանքին պահպանութեան մնացած սակաւաւոր միաբաններ, աթոռին պաշտպանութեան համար կանուխէն ստացուած արքունի հրովարտակը արքայորդւոյն կը ներկայացնեն Զաքարիա վարդապետին ձեռքով, և 600 հոգւոյ Պարսից գունդ մը պահապան կը հաստատուի Էջմիածինի մէջ։ Նոյն միջոցին Ցիցիանով Ապարանի կողմէն կ'իջնէ։ Մահմատ իբրեւ նշան բարեկամութեան Ղասիմ պէկը կը ղրկէ, որ Ռուսներուն առաջնորդէ, որոնք Եղիվարդ և Օշական գիւղերու ճամբով կու գան բանակիլ Շրէշ կամ Շռէժ բլուրին վրայ, յունիս 20'ին Հռիփսիմեանց տօնին օրը (ԴԻԻ. Ա. 177)։

**ՌՈՒՍՔ ԵՒ ՊԱՐՍԻԿՔ**

**ԷՋՄԻԱԾԻՆԻ ԿԱՑՈՒԹԻՒՆԸ**

2280. Ռուսաց և Պարսից պատերազմը կը սկսի նոյն օրը Ղարիբանոց կոչուած տեղը, Էջմիածինի և Հռիփսիմեանց տաճարներուն միջեւ տարածուող դաշտին վրայ, և կը շարունակէ երկրորդ ու երրորդ, յունիս 21 և 22 օրերն ալ, մինչեւ որ արքայորդին կը պարտաւորուի ետ քաշուիլ մինչեւ Երասխի գետեզերքը, և Ռուսներ կը տիրանան Էջմիածինի։ Ռուսական բանակին հետ էին Դանիէլեան գործիչներ, Գեղարդակիրը և Խամսեցին և Աշտարակեցին՝ հետեւորդ եկեղեցականներով, որոնցմէ Յակոբ Մաշկերցի վարդապետ և Տրդատ Աստրախանցի սարկաւագ պատերազմի մէջ սպանուեցան (ԴԻԻ. Ա. 178)։ Դանիէլեաններ և Ցիցիանով անշուշտ մտադրած էին, Էջմիածինը գրաւելով աթոռին տիրանալ և Դանիէլը նստեցնել, բայց Դանիէլ կալանաւոր փակուած էր Երեւանի բերդը (ԴԻԻ. Ա. 179)։ Ռուսաց կողմէ, Դաւիթին հրաւէր կը կարդացուի Երեւանէ դուրս գալ և իրենց հպատակիլ, Դաւիթ

մերժել կը ցուցնէ, թէպէտեւ ձեռուրնիս ունինք Ռուսաց համակիր նամակի մը պատճէնը (ԴԻՒ. Է. 426)։ Պաշտօնական մերժումին վրայ Ռուսներ Էջմիածինի մէջ գտնուած մթերքին կը [illegible], և սպասներն ալ հաւաքելով միաբանն կը փոխադրեն, որ կայսրը ինչ տուեալ է նոցա անէ (ԴԻՒ. Է. ՃԲ)։ Այդ գործին մէջ Ռուսներուն կը գործակցին Աշտարակեցին և ընկերները։ Կողոպուտին մասին շատ խիստ գոյներով խօսած են Դաւիթ և Դաւիթեանք, իբր այն թէ անհագին հարստութիւններէ մերկացած ըլլայ Էջմիածինը Դանիէլեանց ձեռքով (ԴԻՒ. Է. ՃԵ)։ Սակայն իրենք իրենց կը հակասեն, քանի որ յառաջագոյն ըսած էին, թէ «ամէն մեծութէն անօթները Դաւիթ ժողովեց և տարաւ Երևանի բերդը, որ Էջմիածինը քրքրած դէպքում Ռուսներէ չմնայ Էջմիածնէ գոյքը» (ԴԻՒ. Է. ՃԱ)։ Հետեւապէս Էջմիածինի ստացուածոց լաւագոյն մասը Դաւիթեաններէ և ոչ Դանիէլեաններէ հարկ կ'ըլլայ փնտռել, և իրենց տարաժամ ողբերը, ըրածնին ծածկելու աղաղակներ եղած կ'ըլլան։

2281. Շուէշի ճակատամարտին ելքը Պարսիկները սթափեցուց, և արքայորդին ու խանը տեսան, որ իրենց հակառակութենէն

**ՌՈՒՍՆԵՐ ԿԸ ՔԱՇՈՒԻՆ**

շահողը Ռուսը պիտի ըլլայ, և իրենք միշտ պիտի վնասուին. ուստի գաղտնի կերպով սկսան իրարու մօտենալ և իրաւախոհութեամբ բանակամանալ։ Խարէական դերը կատարողը եղաւ Մահմատ, որ երբ մէկ կողմէն արքայորդւոյն հետ կը բանակցէր, միւս կողմէն Ցիցիանովը կը յորդորէր, նախապէս արքայորդիին բանակը հեռացնել, որ ինքն ալ իրենց հետ ըլլայ։ Ռուսներ յունիս 25'ին Էջմիածինէ կ'ելլեն, Փարաքարի մօտ Պարսիկները կը վանեն, և Կաւակերտ կ'իջնեն։ Աբաս Միրզա 27'ին Քանաքեռ կու գայ, Ցիցիանով վրան կը յարձակի, և Պարսիկներ կը փախչին դէպի Խորվիրապ, և Ռուսներ բանակետղը կը գրաւեն. յուլիս 2'ին Երեւանի քաղաքն ալ կը մտնեն, ու բերդը կը պաշարեն, և կը պահանջեն որ Դաւիթ և Դանիէլ և Էջմիածինի գոյքեր իրենց յանձնուին։ Դաւիթ իւր կողմէն նենգամիտ յարաբերութեան կ'ուզէ մտնել, բայց չընդունուիր իւր առաջարկը։ Յուլիս 15'ին նոր ընդհարում Պարսիկներու հետ Ազատ գետի եզերքը. 25'ին կրկին պատերազմ մը Պարսկաստանէ Ֆէթհալի շահին հրամանատարութեամբ նոր հասնող մեծ բանակին հետ, Հրազդանի հովիտին մէջ։ Պատերազմներուն ելքը թէպէտ Ռուսաց նպաստաւոր, բայց չընկճեր Պարսից դիմադրութիւնը։ Ցիցիանով մէկ կողմէն կը սպասէ որ Մահմատ բերդը պիտի յանձնէ, իսկ միւս կողմէն Մահմատ իբրեւ պայման կը պահանջէ Պարսիկ բանակին իսպառ հեռացումը, որուն գաղտ կ'օգնէր ալ, և որ միշտ կը զօրանար նոր ոյժերով, և մեծ ճակատամարտէ խուսափելով Ռուս բանակը կը նեղէր և անոր պարենաւորումը կը դժուարացնէր։ Ամառը կ'անցնի չարունակ փոքրիկ ընդհարումներով։ Մինչեւ որ սեպտեմբեր 4'ին Ցիցիանով ընդհանուր յարձակում մը կ'ընէ Երեւանի բերդին վրայ, և կը յաջողի ղափանաձև բանալ ի դուրսն, այնպէս որ բերդակալներ կը խորհէին յաղթութեան լինել անյնարար (ԴԻՒ. Ա. 185)։ Այլ յանկարծական իմն որոշմամբ՝ գիշերայն Ռուս զօրքը ետ կը քաշուի, և միւս օր 5'ին դէպ Էջմիածին կը մեկնի, և 6'ին Էջմիածինն ալ կը թողու և կը հեռանայ։ Մէկտեղ կ'երթան Դանիէլեան գործիչներն ալ, նաեւ վանքի մէջ եղողներէն անոնք որ Դաւիթի վրէժխնդրութենէն կը վախնային, և այս առթիւ միասին կը տանին արդէն հաւաքուած իրեղէնները, թերեւս մաս մըն ալ նորէն վրան աւելցնելով։ Ռուսներուն յանկարծ հեռանալը գաղտնիք մը մնացած է պատմութեան մէջ. ոմանք կայսեր կողմէ եկած խորհրդաւոր հրահանգի մը, ուրիշներ Ռուսաց բանակին պաշարը պակսելուն, ոմանք բանակին մէջ վարակիչ հիւանդութեան ճարակելուն, և ուրիշներ Ռուս բանակին ետեւի կողմէ պաշարուելու վախին կը վերագրեն։ Ամէն առթի մէջ ժամանակակիցներու գնահատումով, Ցիցիանով այդ յանկարծական որոշմամբ՝ ստոյգ յաջողութիւնը ձեռքէն հանած է (ՄՍՐ. 61)։

2282. Հազիւ թէ Ռուսները կը մեկնին, որ Պարսիկներ Էջմիածինը կը գրաւեն, և թալանի կու տան ինչ՝ որ կը գտնեն, նոյն իսկ մատենադարանի գիրքերն ալ կը

ցրուեն, կամ իբր կողոպուտ կը վերցնեն։ Այստեղ ալ դարձեալ Էջմիածինի կորուստներուն պատասխանատուութիւնը Դանիէլեանց և Ռուսաց վրայ կը նետուի Դաւիթէ և Դաւիթեաններէ։

**ԴԱՆԻԷԼ ԱՔՍՈՐՈՒԱԾ**

Սակայն շատ աւելի հաւանական է Պարսիկ հրոսակին վայրագութիւնը, քան Ռուս զօրականին կատաղութիւնը. և իբր փաստ կրնանք յիշատակել, թէ Էջմիածինի պղնձեղէնները և հանդերձները և գիրքերը բեռներով և հազարներով վաճառուելու հանած են Թավրէզի հրապարակին վրայ (ԴԻԻ. Ա. 186 և ԴԻԻ. Ե. 424). ուր ընդհակառակն Ռուսներու հետ տարուածները Տփղիսի մէջ ի պահեստի էին ընդ գանձուն կայսերական, առանց արարելու նշան ու նշան (ԴԻԻ. Ե. 451)։ Ստոյգ է որ երբ Դաւիթ իրեններով, կալանաւոր Դանիէլն ալ մէկտեղ, Երեւանէ Էջմիածին եկած է, շատ տխուր վիճակի մէջ գտած է վանքն ու տաճարը, սակայն մնասուց պատասխանատուութեան մեծագոյն մասը իրեն վրայ կը ծանրանայ, որ լոկ կամահաճ բռնութեամբ աթոռին տիրանալով, իրեն յոյսը հաստատած է անիշխանական կառավարութեան մը վրայ, և իւր զօրութիւնը փնտռած է վայրագ հրոսակին և անյագ կաշառակերներուն պաշտպանութեան մէջ։ Դաւիթին եռեւէն Ֆէթհալի շահն ալ Էջմիածին եկաւ, տաճարին յարգանք ունեցեր ընծայեց, Դաւիթին օգնութիւն և պաշտպանութիւն խոստացաւ, և իւր յաջողութեամբը ճոխանալով անոր հակառակորդները ընկճելու ամէն պատրաստակամութիւն յայտնեց։ Դաւիթ պարագայէն օգտուեցաւ Դանիէլի վրայ ամբաստանութիւններ կուտել, իբրեւ Ռուսաց պաշտպանեալ, Ռուսները գրգռող, Ռուսները Պարսից դէմ հանող, և ամէն մնասուց պարտական։ Շահը գրգռուած Դանիէլը կշտամբեց, իսկ սա ամենայն հանդարտութեամբ և հեզութեամբ կը պատասխանէ, թէ մտածելու իսկ բան չէ, որ Նախարարներ երկու մեծագլխեաներէ խորհրդով և հրամանով կառավարեն. զի եթէ ձարբ իւր խորհրդով կը գործէ, ապա շահն ալ Դաւիթի խորհրդով գործած կ'ըլլայ։ Ֆէթհալի կը տպաւորուի այդ պատասխանէն (ԴԻԻ. Է. ԻԳ)։ Բայց Դաւիթ վրայ կը հասնի նորէն գրգռել, և Դանիէլը աքսորելու առաջարկ կ'ընէ, որուն Ֆէթհալի կը համակերպի, թերեւս չուզեր ալ զայն Դաւիթին ձեռքին և կիրքին ներքեւ թողուլ։ Այսպէս սեպտեմբեր 12'ին Դանիէլ ճանպայ կը հանուի դէպի Թավրիզ, ուր կը հասնի 19'ին, և Մահտեսի Յովհաննէս անուն Հայի մը տունը հիւր կը տրուի (ԴԻԻ. Ա. 188 և Ե. 423)։ Դանիէլի հասնելէն երկու օր ետքը շահն ալ կը հասնի Թավրիզ, և իրեն հետեւորդներէն ուրացեալ Վրացի Գէորգի պէյ, Դաւիթի մտերիմ և գործիք, կը սկսի դարձեալ շահին միտքը պղտորել Դանիէլի վրայ, և չհանդարտիր, մինչեւ որ հրաման հանել կու տայ Թավրիզէն հանել և Մարաղա աքսորել, յանձնելով տեղւոյն Ահմէտ, ըստ այլոց Մէհմէտ խանին, պատուիրելով իրեն հետ տանիլ և զգուշութեամբ պահել։ Ըստայսմ միեւնոյն 1804 սեպտեմբերին վերջերը յարմար կ'ըլլայ դնել Դանիէլի աքսորը։ Մարաղացի իշխանը սկիզբները խստութեամբ վարէր իւր կալանաւորին հետ, բայց հետզհետէ տեսնալով թէ ծերունիկս ոչ է նա և աշխարհաէր, բանտարկութեան խստութիւնը դադրեցուց, և թոյլ ետ կալ ընդարձակ ի տան խորում (ՄՍՐ. 62)։

**ԴԱՆԻԷԼԻ ՀԱՄԱՐ**

**2283**. Դանիէլի աքսորական կեանքը Մարաղայի մէջ երկարեցաւ մինչեւ 1807 մայիս, որ է ըսել երկու-քուկէս տարիէ աւելի, և Դաւիթ կարծեց, որ կրնայ այլեւս թէ ոչ կատարեալ հանդարտութեամբ, գոնէ բաւական ապահովութեամբ իւր աթոռը պահել մինչեւ վերջ։ Դաւիթեանց և Դանիէլեանց ներհակընդդէմ պայքարները չմարեցան, բայց իրենց սուր վիճակը չունեցան, և արկածալից ելեւէջները դադարեցան, և կացութիւնը գործնականապէս կայուն կերպարան առաւ։ Դանիէլը իբրեւ կաթողիկոս ճանչցողներ և անոր անունով գործողներ պակաս չեղան, Դանիէլ ալ կաթողիկոս կոչումը չէր թողած (ԴԻԻ. Ե. 478), թէպէտ երբեմն պարզ արքեպիսկոպոս անունով ալ կը գրէր (ԴԻԻ. Ե. 477), բայց աւելի կաթողիկոս կոչումը կը գործածէր (ԴԻԻ. Ե. 494), աւելցնելով թէ կաթողիկոս եմ ընտրեալ ի ձեռն Տէրանեաց (ԴԻԻ. Ե. 492)։ Միեւնոյն առեն

պաշտօնական հրամաններ տալէ և կարգադրութիւններ ընելէ չէր քաշուեր, սակայն միշտ ամփոփ շրջանակի մէջ, զի ընդհանուր գործեր Դաւիթի անունով և իշխանութեամբ կը կատարուէին։ Այդ կացութեան կը նպաստէր Յովհաննէս Բաբերդցիի Կ-Պոլսոյ պատրիարքական աթոռին վրայ մնալը, ուր վերադարձած էր նա 1802 հոկտեմբերին, և իշխանութիւնը պահեց մինչև 1813 սեպտեմբեր, և գիտենք թէ զօրաւոր պաշտպան մըն էր Դաւիթի կաթողիկոսութեան։ Դաւիթի վրայ խօսելով, երբեք չծածկեցինք մենք անոր անխոնջ և ժիր աշխատութիւնը, ցաւելով միայն որ մինչև բռնութիւն և բռնական տիրապետութիւն մղեց իւր ձգտումները։ Ներկայ պարագային մէջ ալ, Մայրաթոռին ահագին տագնապէն և չորաչոր աւերումէն ետքը, Դաւիթ անօգուտ չեղաւ Էջմիածնի վերանորոգման գործին համար, և իւր բոլոր կարողութիւնը գործածեց աւերեալ վիճակը դարմանելու, թէպէտև մեծ բան չկրցաւ իրականացնել։ Ինքն կ'ուզէր արդիւնքներ ցուցնելով համակրութիւն շահիլ, լաւ գիտնալով թէ ազգին ընդհանրութեան մէջ չէր վայելեր պէտք եղած սէրն ու յարգանքը. և միայն իւր տիրապետութեան ոյժն և շատերուն տագնապներէ խոյս տալու փոյթն էր, որ տանելի ըրած էր իւր կաթողիկոսական իշխանութիւնը։ Նոյնինքն Մայրաթոռոյ միաբանութիւնը, որ աւելի ընկճած՝ քան համոզուած կը մնար Դաւիթի ձեռքին տակ, չէր քաշուեր միևնոյն ատեն պաշտօնապէս դիմել Ռուսաց Աղեքսանդր կայսեր, զի ողորմեսցէ ի Տէրն ... [illegible] պատրիարքն Դանիէլ (ԴԻԻ. Ե. 481), և նոյն նպատակով Ցիցիանովի միջնորդութիւնը կը խնդրէր, որպէսզի ազատուին ի Ներսէսեանց, որոյ անողորմաբար [illegible] Դաւիթ անիրաւ և անիրաւաբար կորզեալ (ԴԻԻ. Ե. 483)։

2284. Միաբաններ այդ համարձակութիւնը կը ստանային անշուշտ Ռուսաց կողմէ Էջմիածնի մասին ցուցուած մտադրութենէն, զի Ցիցիանով անգամ մը հետանալէն ետքը, միւս տարին 1805'ին նոր գունդ կը ղրկէր Էջմիածնի կողմերը՝ Նեսվիտայէվ զօրավարի գլխաւորութեամբ, որ Շաքիի և Ղարաբաղի խանութիւնները նուաճելէ կը դառնար (ԵՐՑ. Ա. 34), ուր ժողովեալ և [illegible] ամենայն Հայոց Արցախեցիք, մասնակցած էին այլազգիներու դէմ յաղթանակին (ԴԻԻ. Ե. 457)։ Ռուս զօրավարը ուղղակի Դաւիթին առաջարկեց մայիս 5'ին՝ Պարսիկ իշխանութենէն ձեռք քաշել, և իւր կաթողիկոսութիւնը փոխանակել Ռուսաց պաշտպանութեան ներքև հանգիստ ու ապահով վիճակի հետ. սակայն Դաւիթ բացէբաց մերժեց առաջարկը, և վտանգի չենթարկուելու համար, նորէն Երևան գընաց Մահմատ խանի պաշտպանութեան ներքև, և ամրացեալ բերդին մէջ փակուեցաւ, մինչև որ Նեսվիտայէվ առանց նոր պատերազմի մտնելու, ետ դարձաւ (ԴԻԻ. Ե. 445), և նորէն Էջմիածնի գոյքերէն մաս մը հետը Տփղիս փոխադրեց, Գուդովիչէ [illegible] համար (ՄՌՎ. 333)։ Կը հաւաստուի թէ այս առթիւ միասին տարուած են Դաւիթին սեփական գոյքերն ալ, զորս նա վերջին հապճեպ փախուստին՝ չէր կրցած միասին Երևան փոխադրել։ Այդ գոյքեր, որոնց մասին Գեղարդակիր վկայած է թէ զգուշութեամբ կը պահուէին, յետոյ մասամբ միայն ետ բերուած են Էջմիածին։ Իսկ Էջմիածնի նիւթական կորուստը երկու կողմերու ալ հաւասարապէս պէտք է վերագրենք, որոնք չքաշուեցան անոնցմէ օգտուիլ, քանի որ առանց դրամական զոհողութեանց չէին կրնար իշխանութիւնները իրենց կողմը շահիլ։ Նեսվիտայէվի ետ դառնալէն ետքը, նորէն Դաւիթ եկաւ Էջմիածին, և միշտ աւելի տխուր և աւելի աւեր գտաւ վանքին կացութիւնը, որուն վրայ ինքն ալ յուսահատած կ'երևի, զի իւր գործունէութիւնը նուազեցուցած է, մինչև իսկ իւր տիրապետական ձգտումներուն մէջ յոգնած ու տկարացած, և բռնազբօսիկ կաթողիկոսութենէն ձանձրացած ըլլալու երևոյթն ունեցած է։ Մեզի հասած յիշատակներ, 1805 մայիսէն մինչև 1807 մայիսը, երկու տարուան միջոցի մէջ, գրեթէ անգործ կեանք մը կը ներկայեն Դաւիթի մասին։ Նա սակայն Երևանի մէջ ալ ապրած է, Անապատ անունով ծանօթ վանքին մէջ, որ կաթողի-

ԴԱՒԻԹԻ ԸՆԹԱՑՔԸ

կոններու քաղաքամիջի օթարանն էր, և քանիներու ձեռօք նորգութիւններ և յարգարումներ տեսած էր։ Դաւիթ փոփոխակի կը գտնուէր Էջմիածին և Երեւան, իւր վստահութիւնը ամուր հաստատած Պարսկական պաշտպանութեան վրայ, զոր միայն կաշառքի և վաճառքի ոյժով կրնար իրեն նպաստաւոր պահել, զի քաղաքական ուղղութեան փաստը նշանակութիւն չունէր Պարսկական իշխանութեանց աչքին։ Այդ մասին գուշակական եղաւ Դանիէլեաններուն ակնկալութիւնը, որոնք Դաւիթի Պարսիկներուն վստահացած ըլլալը յիշելով կը գրէին. Ցուցանէ թէ որով ինչ մեղանչէ ոք, նովիմբ և տանջեսցի (ԴԻՒ. Ե. 455). զի վերջէն վերջ Պարսիկներն եղան Դաւիթը տապալողներն ալ։ Անոր ձախողութիւնը սկսաւ երբոր Ֆէթհալի շահ, որ Մահմատի ինքնիշխանութեան ձգտումները չէր կրնար մոռնալ, զայն Երեւանէն հեռացուց, և տեղը նորշանակեց Մէհտիղուլի անուն իշխան մը (ԴԻՒ. Ե. 463), և միւս տարին 1806'ին այն ալ փոխեց, և Երեւանը յանձնեց Մարաղայի իշխան Ահմէտ խանին (ՄՍՐ. 66), նոյն այն Ահմէտը՝ որուն պաշտպանութեան յանձնուած էր Դանիէլ, և որ երթալով աւելի համակրանք և յարգանք տածած էր անոր վրայ, մանաւանդ իւր որդւոյն՝ Դանիէլի աղօթիւքն եւքը հիւանդութենէ, բժշկուելուն վրայ։

2285. Ահմէտ խանի այդ ընթացքն էր անշուշտ, որ դիւրութիւն կ'ընծայէր Դանիէլեանց՝ Դանիէլի հետ յարաբերութեան մէջ մնալ, և հեռուէ հեռու կարեւոր գործառնութեանց ալ ձեռք զարնել։ **ԴԱՆԻԷԼԵԱՆՑ ՋԱՆՔԵՐԸ** Որոշ չենք գիտեր թէ Դանիէլ զով ունէր իրեն հետ, ամէն առթի մէջ նշանաւոր օգնական մը ունեցած պիտի չըլլայ իւր մօտը, զի գլխաւորներ, հեռու էին, և Ռուսատանի կողմերը՝ Տփղիսի և Նորնախիջեւանի մէջ կը գործէին. իսկ Մոսկուա և Պետրբուրգ՝ Լազարեաններն էին Դանիէլի պաշտպանները, որոց գերդաստանին գլուխը կը գտնուէր Մինաս իշխան։ Այդ յարաբերութեանց մէջ աւելի կասկած ունեցած կ'երեւին ազգայիններէն քան Պարսիկներէն, գլխաւորապէս Դաւիթի արբանեակներէն, վասնզի պէտք զգացած էին թղթակցիլ ծածկագրով իմն և նորահնար նշանագրով (ՄՍՐ. 65), որոնք ուրիշ բան չէին, բայց եթէ կամայական նոր ձեւեր հայկական այբուբենի տառերը փոխանակող, որպէսզի թուղթերը ձեռք ինկած ատեն ալ պարունակութիւնը չհասկցուի։ Անշուշտ այդ թղթակցութեանց մէջ գլխաւոր նպատակնին էր իրարու վրայ ծանօթութիւն տալ, և միանգամայն ազատութեան ձեռնարկներ և հնարքներ մտածել. սակայն մենք այդ կէտերով պիտի չզբաղինք, որ մեզ շատ մանրամասնութեանց կրնան տանիլ, և մասամբ ալ գաղտնի կը մնան ծածկագրով նշանագիրներու ներքեւ, թէպէտեւ անոնց ընթերցումը լուծելու հետամուտներ, և փոքրիշատէ յաջողութիւն ունեցողներ ալ եղան։ Մենք զբաղինք հանրութեան պատկանող խնդիրներով, որոնց գլխաւորն էր Էջմիածինի մէջ Սինոդի մը կազմութեան գաղափարը։

2286. Էջմիածինի մէջ Սինոդ ունենալու առաջին գաղափարը ծագած էր Կ-Պոլսոյ աւագանոյն կողմէն **ՍԻՆՈԴԻ ԳԱՂԱՓԱՐ** Զաքարիա Կաղզուանցիի թելադրութեամբ, երբոր Ղուկաս կաթողիկոսի ընտրութեան խնդիրին մէջ ժողովրդական հաւանութեան ցուցանելոյ միտքը յայտնեցին (§ 2151)։ Մենք իւր կարգին բացատրեցինք թէ, այդ առաջարկը չմոռցուեցաւ երբոր Ղուկասի ընտրութիւնը Զաքարիայի կողմէն ալ ընդունուեցաւ, և ընդդիմութեան խնդիր ըլլալէ դադարեցաւ, ինչպէս Աշտարակեցիին վկայութիւնն ալ հաստատած է (§ 2216). թէպէտեւ այն ատեն ոչ սինոդի անունն էր խօսուած, և ոչ խորհրդականներուն պաշտօնը ճշդուած։ Կ'ընդունինք եւս, որ եթէ Ղուկասի օրով խորհրդականներու կիսկատար ժողով մըն ալ կազմուեցաւ, յետոյ անոր գոյութիւնը խափանուեցաւ, երբոր Մայրաթոռ երկարատեւ անտէրնջութեան մատնուեցաւ, ընտրողական պայքարներու ներքեւ, որոնց վերջ չկրցաւ դնել Յովսէփի ընտրութիւնը, և զոր բոլորովին խանգարեց Դաւիթի բռնի տիրապետութիւնը, և կամահաճ կամակոր կառավարութիւնը։ Դանիէլի և Դանիէլեանց կողմէն նպաստաւոր միտք

*մըն էր, Կ-Պոլսեցիներէ ծագում առած այդ գաղափարը արծարծել, և իրենց ունենալիք կառավարութեան մասին կանխիկ և հաստատուն երաշխաւորութիւն ընծայել, կաթողիկոսին վարելիք մատակարարութիւնը խորհրդականներու գործակցութեան ենթարկելով։ Այդ կէտը անշուշտ խօսուած էր կանուխէն ալ, թէպէտ Դանիէլի օծման առթիւ պատրաստուած գրութեանց մէջ յիշատակուած չենք տեսներ։ Խնդիրը ձեւք առնուած կը գտնենք Մարաղայի աքսորանքի միջոցին, իբրեւ նախապատրաստական ոյժ մը կամ իբրեւ ապագային երաշխաւորութիւն մը։ Առաջին յիշատակութիւնը կը գտնենք 1805 օգոստոս 16ին Յովհաննէս և Գրիգոր և Բարսեղ եպիսկոպոսներէ և Ներսէս վարդապետէ՝ իշխան Մինաս Եղիազարեանին կամ Լազարեանին ուղղուած գիրին մէջ, ուր այդպիսի հաստատութեան համար անոր աջակցութիւնը կը խնդրեն, և հարկաւ կանուխէն Դանիէլի միտքն ալ շօշափած էին։ Իրենց նպատակն է, որ* քահանայապետ սորին քաղաքաբնեան եպիսկոպոսաց, և եպիսկոպոսք սորին միմեանց և սորին քահանայապետի՝ մի՛ ինչ իշխեսցեն միայնակ և առանցինն կամօք գործել յեկեղեցւոջ *(ԴԻԻ. Ե. 460)։ Այդ կանոնին իբրեւ փաստ կը յիշեն Թադէոս առաքեալը, Նիկիոյ ժողովը, Անտիոքայ ժողովը և Գրիգոր Աստուածաբանը առանց վկայութիւնները առջեւ բերելու, և քիչ ետքը կ'աւելցնեն եւս* ձեռնտէրս Կոստանդնուպոլսոյ իշխանացն Հայոց *(ԴԻԻ. Ե. 461), որով յայտնապէս կ'ակնարկեն Ղուկասի ընտրութեան առթիւ առաջարկուած կէտերուն (§ 2151)։ Սուրբ Գիրքին ալ դիմելով առջեւ կը բերեն ժողովողին գրածը.* Զի եթէ գլորեսցի մին՝ կանգնեսցէ զնա ընկեր իւր, և վա՜յ միայնոյ եթէ գլորեսցի, և ոչ գոյցէ մին՝ որ յարուցանիցէ զնա *(ԺՈՂ. Դ. 10)։ Նամակը գրողներ կը յայտարարեն իշխան Մինասի, թէ* խորհուրդ տուեալ մեզ՝ զխորհուրդ որդւոց մեր լուծեցէք *(ԴԻԻ. Ե. 462), որով կ'ակնարկեն անոր յուլիս 20ին գրած նամակին (ԴԻԻ. Ե. 459), և կը յանձնարարեն որ նոյն խորհուրդը յիշեցնէ* առաքելական հօր մերում Եփրեմ արքեպիսկոպոսի *(ԴԻԻ. Ե. 463)։ Այսպէս կը սկսի Էջմիածինի Սինոդին ծագումը, թէպէտ տակաւին այդ անունը չունի։*

**2287.** *Էջմիածնայ մէջ սինոդ մը կազմելու մտածմունքին հետզհետէ առած ձեւերուն, ոչ մանրամասնութիւնները ունինք և ոչ ալ կը սիրենք հետազօտութիւններով գրութիւննիս ծապաղել. ուստի մէկէն կ'անցնինք 1806 յուլիս 10ին Դանիէլի Մարաղայէ արձակած հայրապետական կոնդակին, որ խորհրդարանական ձեւին հիմնագիրն ու հիմնագիծը կրնայ նկատուիլ։ Կոնդակին առաջին մասը ընդարձակ քարոզութիւն մըն է Սուրբ Գրոց օծութեամբ և հոգեշունչ յայտարարութիւններով ճոխացած, որուն մէջ ինքնիշխան և ազնկամի վարչութեան հետեւանքները կը նշաւակուին, և եկեղեցական մարմնոյն միաբան խորհրդակցութեամբ գործելու ձեւը իբրեւ սկզբունք կ'ընդունուի, համաձայն Կղեմայ հայրապետին 32րդ կանոնին.* Եպիսկոպոսապետն ընդ եպիսկոպոսաց, և եպիսկոպոսք ընդ եպիսկոպոսապետի զամենայն ինչ խորհրդով և միաբանութեամբ արասցեն *(ԴԻԻ. Բ. 210), որ է Երկրորդ Առաքելականաց 32րդ կանոնը։* Եպիսկոպոսք իւրաքանչիւր ազգի գիտել պարտին զիւրեանց առաջինն, և համարել զնա իբրեւ գլխաւոր, և մի՛ ինչ առաւելորդ առնել առանց նորա կամաց, այլ և ոչ նմա առանց նոցա կամաց առնել ինչ *(ԿԱՆ. 13)։ Դանիէլ կը խոստովանի կաթողիկոսութիւն վարողներուն անտեղի ընթացքը, որոնք յանդգնեցան* ընդդէմ սեղանոյ և վայելչական կարգաց եկեղեցւոյ և առաքելաձեռնածոյ, անզգամութեամբ մանձանել զօրէնս ի Սիոն *(ԴԻԻ Բ. 206), ուստի ինքն ալ, որ կոչուած է* օրհնեալ տէր հոգեւոր և ծայրագոյն արքեպիսկոպոսապետ և ընդհանրական կաթողիկոս, *ես, կ'ըսէ,* սկիզբն յինէն արարեալ, առաջի ամենայն յեղ, զի ես թուլացեալ կամօք իմովք յօժարեալ եմ և ախորժեմ, զի խորտակեալ եղիցի կարգաւորութեանն քահանայական յամենայն իշխանութենէ իմմէ, և դադարեսցէն ինչ հերձուածոց զապականել յանդգնաբար ապականութեան *(ԴԻԻ. Բ. 208)։ Այդ նպատակով խորհրդակից մարմին մը կը հաստատէ, որուն անդամները կը կոչուին՝* Դատաւորք արքունի ատենադրաց *(ԴԻԻ. Բ. 212), որոնք պիտի ժողովին* յամենայն ազգի, *մէջտեղը պիտի դրուին* սուրբ Խաչն և Աւետարանն Քրիստոսի, և գիրք օրինաց և կանոնաց սրբոց Հարցն,

ԴԱՆԻԷԼԻ ԿՈՆԴԱԿԸ

և անոնցմէ ներշնչուելով պիտի քննեն, որոշեն և դատեն ամէն խնդիր, գանգատ և բողոք, և երբ չկարասցէ որոշել ինքնին ինչ, պիտի զբաղին այն կէտերով, որք պայծառացուցեն զանշէջեցեալ Մայր աթոռ մեր Էջմիածին, և զազգ և զեկեղեցի Հայաստանեայց։ Նոյն անձեր պիտի ըլլան ամենագետ վերակացուք պաշտպանելոյ զամենայն բարութիւնս գրանեցեալ յաթոռ սուրբ Էջմիածնի, և յամենայն ազգս և յեկեղեցիս Լուսաւորչեան հաւատացելոց, և թանալոյ դդրօ ներողութեան ի նորին յառաջընդ (Դիւ. Բ. 213)։ Հետեւապէս կազմուելիք սինոդին իշխանութիւնը պիտի տարածուի, կանոնական և դատական, բարեկարգական և մատակարարական ճիւղերու վրայ հաւասարապէս։

ԿԱԶՄՈՒԹԵԱՆ ՁԵՒԵՐ

2288. Դանիէլ Մարաղայի մէջ, ի [illegible], կրնար խօսիլ զծխոյն ազգէ և եկեղեցւոյ Հայաստանեայց (Դիւ. Բ. 206), այլ միջոց չունէր իւր խորհուրդը գործադրելու. ուստի իւր կողմանէ լիազօրներ կը նշանակէ խորհուրդը իրականացնելու, և են, Ռուսաստանի առաջնորդ Եփրեմ արքեպիսկոպոսը՝ որ է Ձորագեղցին, նախորդ պատրիարք Գրիգոր արքեպիսկոպոսը՝ որ է Խամսեցին, Դաւիթի դէմ մաքառումովը բարեհամբաւեալ (§ 2265) Բարսեղ արքեպիսկոպոսը՝ որ է Աշտարակեցին, և Վրաստանի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսը՝ որ է Գեղարդակիրը։ Ասոնք վերոյիշեալ ձեւով, խաչ և աւետարան և կանոնագիրք մէջտեղ դնելով, պիտի ընտրեն յեպիսկոպոսաց և ի վարդապետաց արժանաւորները, որ եղիցին դատաւորք սրբազան սինոդոսի (Դիւ. Բ. 211)։ Ասկէ կը հետեւի թէ յիշեալ չորսերը տարբեր տեղեր ըլլալնուն՝ Էջմիածին նստող միաբանութեան ժողովին անդամ չէին կրնար ըլլալ. ուստի միայն ընտրելու պաշտօնը կը ստանային։ Իրեն համար ալ խօսելով կը յայտնէր Դանիէլ, որ եթէ Յիսուս ընդդիմակցեսցէ ինձ ի կողմն իմ, պիտի ըլլամ և այլոց նուաստագոյն. և եթէ ալատեսցէ իմաստ՝ պիտի աշխատիմ մինչև ի մահ իմ ծնել. իսկ եթէ ոչ, այսինքն եթէ մինչեւ զմահ աքսորեալ մնայ, մինչ ընդ երեւելեանց և աշխարհաց իմոց, կ'ըսէ, զայս թողում առ յետ իմ որդւոյն յաւիտենական (Դիւ. Բ. 213)։

Նշանակուած չորս ընտրողները տարբեր տեղեր գտնուելնուն, ամէնքը մէկտեղ բերելու և գործադրութեան սկսելու պաշտօնը կը յանձնէ Եփրեմի, միեւնոյն յուլիս 10ին գրուած թղթով մը, ուր յիշելով թէ ընդ իս և զհետ էին ընտրեալ ի կաթողիկոսութեան Հայոց, կը վկայէ անոր [illegible], և անոր կը յանձնարարէ, որ որպէս փոխանորդ և դատաւոր, այլ որպէս նոյն իսկ ինքն անձին իւրոյ, սինհոդոսը կազմել տալ, իւր կոնդակը հրատարակել և տարածել, և Մինաս իշխանին հետ խորհրդակցելով հաղորդել զայն առ և որոց արժան իցէ. որով կ'իմանայ Ռուսական կայսեր գիտակցութեան և հաւանութեան ենթարկել, որպէսզի գործը աւելի հաստատութիւն ստանայ։ Մինաս Լազարեանը պաշտօնապէս կ'անուանէ փոխանորդ մեր ի դրանն ուղղամտութեան (Դիւ. Ե. 493), որ Ռուսական արքունիքին մօտ միայն գործակատարութեան մը գոյութիւնը կը ցուցնէ։ Համաձայն այդ հրահանգի Մինաս պիտի ջանար կայսերական հաւանութեամբ զօրացնել նոր հաստատուելիք մարմինը. ուստի Եփրեմի խորհրդով նախապէս այդ բանին հետամուտ եղաւ։ Օրեր կը սահէին, ակնկալելով թագաւորին հաւանութեան տալոյ՝ այդ դէպքի մի կարգ և կանոն մտցնելու սուրբ աթոռոյն (Դիւ. Բ. 217), բայց պետական գրութեամբ հնար չէր. զի Երեւան և Էջմիածին Ռուսական մարզ չէին։ Նոյն իսկ Դանիէլ և իրենները ալ, երբ այդ տեսակ կարեւոր ձեռնարկներու կը հետեւէին, պէտք էր նկատի առնէին թէ Էջմիածին իրենց իշխանութեան ներքեւ չէր, և Դաւիթ էր որ հոն կ'իշխէր, և միտքի մօտ չէր որ Դանիէլեան ծրագիր մը Դաւիթեան վարչութեան առեն իրականանար։ Միայն թէ, ինչպէս ակնարկեցինք, Դաւիթին ազդեցութիւնը շատ կոտրած էր, մանաւանդ Մարագցի Ահմէտին, Դանիէլի բարեկամին, Երեւանի իշխան կամ կուսակալ անուանուելէն ետքը. և միաբանութիւնը համարձակ իւր ժգոհութիւնը և դիմադրութիւնը կը յայտնէր Դաւիթի դէմ. և ասիկայ Դանիէլի և Դանիէլեանց համարձակութիւն կու տար Էջմիածինի մասին կարգադրութիւններ մտածել և գործադրութիւններ փորձել, թէպէտ Էջմիածին իրենց ձեռքը չէր։ Սակայն Էջ-

միածինէ դուրս ալ միաբանական մարմին մը կար, զի մօտ 65 հոգի էին Էջմիածինէ փախստական միաբանները (ԴԻԻ. Է. ). որոնք Տփղիսի մէջ ծպտօրէն յանուն ընդհանուր միաբանութեան Դաւիթի դէմ կը մաքառէին, և Դանիէլը կաթողիկոս կը ճանչնային։

**2289**. Ռուսական պաշտպանութիւնն ալ հետզհետէ կը զօրանար, քանի Ռուսները կ'ընդարձակէին իրենց աշխարհակալութիւնը Կովկասեան գաւառներու վրայ։

**ՊԱՐՍԻԿ ԱՐՔՈՒՆԻՔԸ**

Կուսակալ իշխան Պօղոս Ցիցիանով, դաւաճանութեամբ սպանուած էր 1806 փետրուարին, Բաքու քաղաքը գրաւած միջոցին. բայց ոչ նուազ բարեկամ մըն էր իր յաջորդը Յովհաննէս Վասիլեան, կամ Իվան Վասիլիչ Գուտովիչ, որ Դանիէլի նպաստաւոր տեղեկութիւն կուտար Պետրբուրգ, երբ այնտեղէն հարցում կ'ուղղուէր իրեն, թէ Երկու կաթողիկոսներէդ՝ ո՞ւրն որ կամի է հաւատալ Հայոց ազգը, և թէ ինչու փոխել ուզէն յարմար է քերել ալ ընտրութեանցը (ԻՐՑ. Ա. 34)։ Գուտովիչ երբ պէտք զգաց Պարսիկ արքունիքին հետ ալ խաղաղութիւն հաստատել, պայմաններու կարգը կը մոցնէր Դանիէլի վերահաստատութիւնը։ Գուտովիչէ ոչ նուազ Դանիէլի պաշտպան մըն էր Ահմէտ խան, որ շահին առջեւ իբր Պարսկական պետութեան նպաստաւոր գործ կը ներկայացնէր Դանիէլի վերահաստատութիւնը, քանի որ Դաւիթ զզուելի եղած էր, և անկէ փախչելու համար եկեղեցականներ և իշխանաւորներ Ռուսական տիրապետութեան սահմանները կ'անցնէին, ժողովուրդն ալ անոնց կը հետեւէր, և սմայի կը դառնային պտղաբերհպատակ գաւառները։ Ահմէտի կը վերագրուի ուրիշ ճարտարութիւն մըն ալ, Դաւիթը անզօրութեան մատնելով իւր նպատակը առջեւ տանելու։ Ահմէտ լուր կը հանէ և Դաւիթի ալ կը հաղորդէ, թէ ծերն այն կորզողն է, որ իրեն յանձնուած էր, վախճանեցաւ ուրիշն Մարաղայի մէջ (ՄՍՐ. 66)։ Ասով Դաւիթ, արդէն յոգնած իւր ճիգերը կը թուլցնէ։ Բայց անկախաբար այդ գրոյցէն ալ, երկկողմանի պաշտպանութիւնները Ցէթհալիի վրայ ազդեցին, որուն համար անտարբեր էր այս կամ այն Հայ եկեղեցականին անձը, և սկսաւ համակերպիլ կուսակալին առաջարկին և Ռուսական պահանջին։ Անշուշտ այդ կացութեան հետեւանքն էր, որ այն առեններ Դանիէլ Մարաղայէ Մարանդ բերուեցաւ, Էջմիածին տարուելու նպատակաւ, բայց կրկին Մարաղա դարձուեցաւ, զի նոյն օրեր Ահմատ խանն ալ եկաւ յԵրեւան, և չկրցաւ Դանիէլը Էջմիածին տանիլ, ինչպէս կը գրէ նոյնինքն Դանիէլ 1806 դեկտեմբեր 17ին։ Դանիէլ միջոց մը եւս շարունակեց մնալ յառաջին բնակութեան ի տուն Ահմատ խանին, վայելելով Օրտու խանի հոգածութիւնը, որ Ահմէտի կողմէն իրեն խնամածու էր եղած. կիրակիները եկեղեցին կ'երթար, և նորէն իւր տեղը կը դառնար (ԴԻԻ. Է. 502)։ Ահմէտ ալ ըլլալէն կամ պաշտօնէ ելլալէն ետքն ալ, որ իւր կամքով տեղի ունեցաւ Երեւանի օդին դիմանալ չկրնալուն համար, շարունակեց Դանիէլի համար միջնորդել, իրեն ձայնակից ունենալով Երեւանի նոր կուսակալ Հիւսէյին Սարտարը, և այս միջնորդութիւններով 1807 ապրիլին ստացուեցաւ Ռագամը, որ է արքունական հրովարտակը, Դանիէլը իբր կաթողիկոս Էջմիածին նստեցնելու։ Ըստ սովորութեան պաշտօնական խիլա և ուրիշ ընծաներն ալ տրուեցան անոր, և հրաման եղաւ զայն պատուով և հանդէսով Երեւան առաջնորդել։ Այսպէս Դաւիթի տապալումը պատրաստուեցաւ նոյն իսկ Պարսիկներուն կողմէն, որոց վրայ դրած էր նա իւր բոլոր յոյսը, և անոնք շահելու համար ծախսած էր՝ իւր և եղբօրը անձնական և Էջմիածինի աթոռական ստացութիւններէն ու հարստութիւններէն մեծամեծ գումարներ։

# Տ. ԴԱՆԻԷԼ Ա. ՍՈՒՐՄԱՌԵՑԻ

**ԴԱՆԻԷԼԻ ԳԱՀԱԿԱԼԵԼԸ**

**2290**. Արքունի հրամանին գործադրութիւնը յատուկ պաշտօնէի մը յանձնարարուեցաւ, որ 500 հեծելոներու գլուխ անցած, Դանիէլը Մարաղայէ Թավրէզ և Թավրէզէ Երեւան առաջնորդեց համդիսաւոր կերպով։ Այրիլին մէջ առացուած էր հրովարտակը, և մայիս 14'ին (ՄՍՐ. 68), Երեւման խաչին երեքշաբթին, Դանիէլ հասած էր Երեւանի մօտ Նորագաւիթ գիւղը, և Հիւսէյին Սարտար նոր կուսակալը՝ պատրաստութիւններ կը կարգադրէր՝ պաշտօնապէս իշխանութիւնը Դաւիթէ Դանիէլի փոխանցելու։ Պաշտօնական գործողութիւնը կատարուեցաւ կուսակալին ապարանքին մէջ։ Դանիէլ ամէն հանդերձանօք Նորագաւիթէ եկաւ, Հիւսէյինէ ընդունուեցաւ, և անոր աջ կողմը նստեցաւ, գլխուն վրայ կրելով արքունական հրովարտակը (ՄՍՐ. 70), որ է Թագաւորին հրամանը գլխուս վրայ բացատրութեան՝ նուիթական և չօշափելի պատկերացումը։ Էջմիածինէ միաբաններու բազմութիւն մը, Նորագաւիթ եկած և անկէ Երեւան ընկերացած էր Դանիէլի, գլուխնին ունենալով Ղազար Վեցիկեան, Սահակ Դարբինեան, Յովհաննէս Գայլակերեան, և գրագիր Անդրէաս եպիսկոպոսները։ Դաւիթ իւր վերջին աւուրներու սովորութեան համեմատ կը գտնուէր Երեւանի Անապատը, և բուական վրդովում զգացած էր, քաղաքին մէջ տեղի ունեցող շարժումներէն։ Անհնար էր որ արքունի հրամանը անգիտանար, բայց կ'երեւի թէ իւր սովորական միջոցներէն վստահութիւնը վերուցած չէր, զի իւր ձեռքին տակ պատրաստ կը պահէր դարձի չըր տանելոյ, որոց մեր մէջ ասէլէ տան ըմբռնած երեւոյթն էր (ՄՍՐ. 71)։ Նոյն միջոցին իրեն ալ հրաւէր կու գայ Սարտարէն՝ Թադէոս Մելիք-Մինասեանի ձեռքով, և կաթողիկոսական ամենայն հանդերձանօք կուսակալին կը ներկայանայ, բայց կաթողիկոսի յատուկ բարձին վրայ Դանիէլը նստած տեսնելով, հետ կը դառնայ ու դուրս կ'ելլայ։ Կառավարական պաշտօնեաներ ևս աւելէն համեստ կը գրուին ամենայն օրհնեալ և պատուական կաթողիկոսական երեսաւորութեան, երիվարը, խաչալեմը, գաւազանը, ու չոթերները (ՄՍՐ. 71)։ Դաւիթ կը պատուարուի Անապատ դառնալ իբրև սովական մը. Դանիէլ եաւուէն կու գայ նոյն Անապատը, իբրև կաթողիկոսներու յատուկ իջեւան, կաթողիկոսական չքախումբի ամէն պարագաներով, և բազմաթիւ հետեւորդներով միաբանութենէն և կառավարական պաշտօնեաներէն։ Հիւսէյին Սարտար պաշտօնապէս հաչակած էր արքունի հրամանը. Դաւիթի իշխանութեան դադարիլը, և Դանիէլի իշխանութեան սկիզբը, և ամէնուն հրամայած այսուհետեւ Դանիէլի հնազանդելու պարտաւորութիւննին։

**ԱՅԴ ՄԱՍԻՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ**

**2291**. Այսպէս վերջացաւ Դաւիթ Ե Էնէգէթցիի կաթողիկոսութիւնը, որ 1801 ապրիլ 28'ին պարսիկ խանի ձեռքով աթոռին տիրացած էր (§ 2118). և 6 տարի ու 16 օր ետքը, 1807 մայիս 14'ին, աթոռէն կը զրկուէր նոյնպէս Պարսիկ խանի ձեռքով, և կ'արդարանար Բան Գրոյն, թէ որով խնէ մեծանէ ու, նուաստ և տանջեսց (ԴԻՒ. Ե. 455)։ Պարսիկ կառավարութեան պաշտպանութեամբ ստացած կաթողիկոսութիւնը, Պարսիկ կառավարութեան հրամանով կը կորսնցնէր։ Այսպէս Դաւիթ իւր միակ ոյժը կը կորսնցընէր, զի իւր իշխանութիւնը ոչ կանոնական ընտրութեան վրայ հիմնուած էր, ոչ ընդհանուր համակրութեամբ զօրացած էր, ոչ ալ քրիստոնեայ պետութեան հովանաւորութեան ներքեւ կը գտնուէր. այլ միմիայն Պարսից կառավարութեան սրտաքին բազուկն էր իւր ոյժը, և անոր պաշտօնէից անյագ ընչաքաղցութեան պարարումն ալ՝ իւր միակ միջոցն էր։ Երբոր այս ալ իրմէ կապտուեցաւ, և քաղաքական տեսակէտներ Պարսից կառավարութեան վրայ աղ-

*ղեցին, զգաց թէ իրեն այլեւս յոյսի նշոյլ չէ մնացած, և ամէն ձգտումներէ մերկանալով, ու նենգամիտ հնարագիտութեան կերպ մը չգտնելով, այն քանի մը օրերուն մէջ, որ Դանիէլի հետ միասին մնաց Երեւանի Անապատը, անձամբ եկաւ և անոր յանձնեց Էջմիածինի կաթողիկոսարանին բանալիները, ըսելով. Ա՜ [illegible]* (ՄՍՐ. 71)։ *Այսպէս ինքնաբերաբար կը խոստովանէր Դաւիթ թէ երբեք վայելք մը կամ օգուտ մը չչահեցաւ իր բռնազբօսիկ կաթողիկոսութենէն։ Գործին խկութեան գալով, հարկ կը զգանք դիտել որ երբ Դաւիթի աթոռազրկութիւնը Պարսիկ կառավարութեան կը վերագրենք, Դանիէլի աթոռակալութիւնն ալ նոյնին վերագրելով, կրնար ըսուիլ, թէ ուրեմն Դանիէլի կաթողիկոսութիւնն ալ կանոնական և եկեղեցական պայմաններէն զուրկ կը մնայ, ինչպէս որ Դաւիթին համար գրեցինք* (§ 2249), *և պարզապէս գործնական տեսակէտով արդարացեալ կաթողիկոսութիւն մը կը դառնայ, ինչպէս Դաւիթինը որակեցինք* (§ 2251)։ *Մեր տեսութիւնը բացայայտ կերպով ճշդելու համար, պէտք է յիշել տանք, թէ Դանիէլ կանուխէն օրինապէս ընտրեալ մըն էր, թէ Մայրաթոռոյ միաբանութենէն* (§ 2219), *և թէ Տաճկահայոց պատրիարքութենէն* (§ 2227), *երբ վրայ հասաւ Յովսէփի կաթողիկոսութիւնը* (§ 2232)։ *Եթէ այս կերպով առաջին ընտրութիւնը իր ոյժը կորուսած ըսենք, երկրորդ ընտրութիւն մըն ալ ունինք* (§ 2244), *կանոնական կերպով կատարուած, որ միեւնոյն կացութիւնը կը վերանորոգէր, և որ իր ոյժը կորուսած չէր կրնար ըսուիլ՝ Դաւիթի առանց նախընթաց և կանոնական պայմանի, լոկ արտաքին և կառավարական բռնի ոյժով օծուելովը* (§ 2249)։ *Մենք զովաբան չեղանք Դանիէլի տարաժամ օծուելուն* (§ 2268), *և պիտի ուզէինք, որ Դանիէլի իրաւունքը պաշտպանելով մէկտեղ, անոր օծումը Մայր տաճարին մէջ կատարուէր, երբ կառավարական ոյժով կանոնական իրաւունքը կը պաշտպանուէր։ Այդ արարողութիւնը այս անգամ տեղի չունեցաւ, և* 1802 *մայիս* 25'*ին կատարուած Բագրեւանդի օծումը վաւերական սեպուեցաւ, և Դանիէլ իբրեւ հինգ տարիէ իվեր ստացուած իրաւունքի տէր, կաթողիկոսական աթոռը բազմեցաւ Էջմիածինի մէջ, ուր բաւական ատեն մնացած էր իբրեւ կալանաւոր և կարգալոյծ, և ուր մօրուքը գերծուելուն նախատանաց ալ ենթարկուած էր։*

**ԷՋՄԻԱԾԻՆԻ ՄԷՋ**

**2292**. *Դանիէլ և Դաւիթ քանի մը օր միասին բնակեցան Անապատը. Հիւսէին խան պարտուպատշաճ հրամանները տուաւ երկուքին ալ, Դաւիթին որ միամըտօրէն հնազանդի, և Դանիէլի որ վեհանձնօրէն սիրաշահի, և միաբանութեան ալ՝ որ հակառակութիւնները վերջացնէ. և այսպէս մայիս* 20'*ին, Յինանց վեցերորդ երկուշաբթի օրը, ամէնքը միասին Երեւանէ Էջմիածին եկան չքեղ հանդիսութեամբ։ Ղրուի այգիի, կամ Ս. Հռիփսիմէի վանքին մօտ. Էջմիածինի միաբաններ և Վաղարշապատի բնակիչներ ուրախութեամբ դիմաւորեցին եկաւորները, յարգանաց նշաններ ցուցնելով Դաւիթի ալ, որ կը մերժէր անոնց ցոյցերը, թէ ահա, [illegible]* (ՄՍՐ. 72), *որ յանելեայն խոստովանութիւն էր թէ ինքն հանրութեան համակրութիւնը չէր վայելած։ Հաւանական է, որ մայիս* 23'*ին Համբարձման օրը՝ իր առաջին հայրապետական հանդիսադրութիւնը կատարած ըլլայ Դանիէլ Մայրտաճարին մէջ, թէպէտ որոշակի նշանակուած չենք գտներ։ Դանիէլ շատ աւեր ու քանդուած գտաւ Մայր աթոռը, որուն մասին Դաւիթ վերջին երկու տարիներու մէջ անփոյթ և անհոգ էր դարձած, և կարծես նախատեսելով, որ այլեւս պիտի չկարենայ վայելել, բոլորովին ձեռքէ թողած էր իր առաջին գործունէութիւնը, և Մայրաթոռին ու Մայրտաճարին համար անտարբեր դիրք մը առած, աւելի Երեւանի մէջ կ'անցընէր իր օրերը։ Դանիէլ իր գործունէութեան մէջ իրեն հետ ունէր իրեն հզօր պաշտպանները, Եփրեմ ու Յովհաննէս, Գրիգոր ու Բարսեղ եպիսկոպոսները, և Մանուէլ ու Ներսէս վարդապետները, որոնք գործօն դեր մը չունեցան վերջին եղելութեանց մէջ, և ոչ ալ տեղերնէն շարժուեցան երբոր Դանիէլի Էջմիածին մըտ-*

*նելը իմացան, այլ իրենց պաշտօններուն կամ գրաղումներուն վրայ մնացին։ Նոյն ինքն Ներսէս Աշտարակեցին ալ հազիւ 1808 մարտ 8'ին Գրիգորուպոլիսէ էջմիածին եկաւ* (ՉԱՄ. Բ. 150), *Դանիէլի նստելէն 10 ամիս ետքը, որով չարդարանար ոմանց խորհրդածութիւնը, թէ Եփրեմ Ներսէսի ներկայութենէն ազատելու համար, Դանիէլի գահակալելը պատճառանք ընելով, փութացուցած ըլլայ զայն իրեն քովէն հեռացնել* (Դիւ. Ե. լԲ)։ *Ընդհակառակն Եփրեմ ու Ներսէս, Լազարեան Մինաս իշխանի միջնորդութեամբ, ջանացած են Ռուսական կայսրութեան մօտ Դանիէլի դիրքը ուժովցնել և նպաստաւոր օգնութիւններ ձեռք ձգել. ինչպէս եղած են, Սուրբ Աննայի ասպետութեան առաջին կարգի չքանշանը* (Դիւ. Ե. 547), *և թանկագին ընծաներ։ Ներսէս այդ միջոցին զանազան խնդիրներ կարգադրելու համար՝ պտտած է Եաշ* (Դիւ.Ե. 525) *և Մողդով և ուրիշ քաղաքներ, որով կը տեսնուի թէ հապճեպ վազք ալ ունեցած չէ, դէպ էջմիածին՝ եպիսկոպոսանալու տենչանօք* (Դիւ. Ե. լԲ), *որ իրեն համար արդարացի վարձատրութիւն էր Դանիէլի կողմէն. այլ կատարուեցաւ իր էջմիածին գալէն ետքը, այսինքն Դանիէլի աթոռ բազմելէն տարի մը ետքը։ Այդ տարւոյն մէջ Դանիէլ աշխատեցաւ ցրուեալ միաբանները հաւաքել, տարուած գոյքերը դարձնել, վանական բարեկարգութիւն հաստատել, միջոցներուն ներելուն չափ նորոգութիւններ ընել, միշտ իրեն գործակից ունենալով ներկայ միաբանները, որոնց գլուխը կը յիշուի Բարսեղ եպիսկոպոս Աշտարակեցին, որ Դանիէլեան գործիչներէն մին էր Տփղիսի մէջ, և առաջին դարձողներէն մին եղած է։ Խամսեցի Գրիգորին գործունէութիւնը այլ եւս յիշուած չենք գտներ, բայց և ոչ մահուան տեղւոյն և ժամանակին վրայ, ճիշդ տեղեկութիւն ունինք։ Ընդհանրապէս Տփղիսի մէջ մեռած կ'ըսուի* (01 ՕՐԱ. 172), *բայց 1808 օգոստոս 23'ին տակաւին իբրեւ կենդանի կը յիշուի Դանիէլի նամակներուն մէջ* (Դիւ. Ե. 584)։

**2293.** *Երբոր էջմիածինի մէջ այդ մեծ փոփոխութիւնք տեղի կ'ունենար, Կ-Պոլսոյ պատրիարքական աթոռին վրայ կը գտնուէր Յովհաննէս Բաբերդցին, զոր զանազան առիթներու մէջ Դաւիթի իբր յայտնի պաշտպան ճանչցանք* (§ 2262, 2272)։

**Կ-ՊՈԼՍՈՅ ՄԷՋ**

*Մայրաթոռոյ միաբանութիւնը Դանիէլի գահակալութիւնը աւետող պաշտօնագիրը յղած էր Կ-Պոլիս, Յովհաննէս վարդապետի մը ձեռօք, որ Գայլակերեանն եղած կ'ըսուի* (ՊէՐ. 54), *որ փութացած էր չուտով հանել մայրաքաղաքը, ուստից յուլիս 27'ին կը գրէ, թէ շնորհիւ Կարապետ Աղնաւորեան և այլ ամիրաներու սիրով ընդունուեցաւ, և* տաղջարբէով բան մը է բարէն կտտրէցաւ, տանց այլ-ալ Ներհալալան ընՌացէց. *և թէ Դանիէլ կաթողիկոսի անունը սկսաւ յիշուիլ յուլիս 13'ին, Վարդավառի բարեկենդանին նախընթաց Առաքելոց տօնին օրը. և թէ զինքն ալ Մայրեկեղեցին պատարագելու հրաւիրեցին Վարդավառին օրը, յուլիս 21'ին։* Մահզէրա- բէր, *այսինքն միաբանութեան հանրագիրը բերող Յովհաննէս վարդապետը, կը գրէ եւս, թէ* շնորհ ատէմ է պատրէարք հօրէն, զոր Բաղ- ման-ճար օրհէ *ալ կը կոչէ* (Դիւ. Ե. 529), *և այսու կը վկայէ, թէ Յովհաննէս Դանիէլի աննպաստ կամ Դաւիթի նպաստաւոր ոչ մի նշան տուած չէ, և լռացած եղելութեան անհակառակ համակերպած է, և գրած ալ է* է Բօլոր տողու Նա յէշտաղէլ *Դանիէլի անունը։ Այդ առթիւ կը յիշուի Յովհաննէսի հրաւէրով ազգային ժողով ալ գումարուած ըլլալը, Դանիէլի համար Օսմանեան կառավարութենէ հրովարտակ ստանալը, Աստուածատուր Կոստանդնուպոլսեցի վարդապետին ձեռօք էջմիածին ղրկուիլը, պատուիրակին և անոր ընկերակցին Երեմիա Կոստանդնուպոլսեցի վարդապետին եպիսկոպոս ձեռնադրուիլը, և ի դարձին Դանիէլէ օրհնութեան կոնդակ բերելնին* (ՊէՐ. 55)։ *Յովհաննէսի ընթացքը լիովին կ'արդարացնէ՝ կոնուխէն անոր մասին մեր յայտնած կարծիքը, թէ նա Դաւիթի մոլեռանդ հետեւող կամ չահողէա կողմնակից մը չէր, այլ պարզապէս լռացուած եղելութեանց համակերպող, և անձերու կամ ձեւակերպութիւններու բծախնդրութեամբ խնդիրներ յուզելէ խուսափող մին էր* (§ 2236)։ *Սակայն Դաւիթ-Դանիէլեան վէճերը միանգամ*

*ընդմիշտ կը փակուէին, երկու կաթողիկոսներու վրայ պատասխանները կը դադարէին, և 1801 ապրիլ 28'ին սկսած, և վեց տարիէ աւելի տեւող, կիրքերու ճարակ տուող, և ազգին միտքերը հասցնող վէճերն ու կռիւները վճռապէս կը վերջանային 1807 յուլիս 13'ին. այլեւս Դաւիթեանները չէին մնար, և Դանիէլ հաստատապէս ամենուն օրինաւոր կաթողիկոս կը ճանչցուէր։*

2294. *Դանիէլի Մարաղայէ գրած կոնդակովը ծրագրուած էր Մայրաթոռոյ կառավարութիւնը և որոշուած էր, կաթողիկոսի անձնական իշխանութիւնը խորհրդակցական ձեւի փոխել, Մնայուն Սինոդի մը կազմութեամբ* (§ 2286), *զոր մենք մեր այժմեան ճշդութեամբ Կրօնական ժողով կամ Կաթողիկոսական Խորհուրդ կրնայինք կոչել։ Դանիէլ խոստացած էր որ իւր ազատութիւնը ստացած վայրկեանէն ըստ այնմ պիտի վարուէր, սակայն իւր Էջմիածին դառնալէն տարի մը անցած էր, և դեռ օրինական գործադրութիւն չէր եղած, թէպէտ ինքն առանց խորհրդակցութեան ձեռնարկներ ընել չէր սիրեր։ Անշուշտ կը սպասէր, որ Ռուսիոյ մէջ այդ նպատակին աշխատողներ Եփրեմ եպիսկոպոս, Ներսէս վարդապետ և Մինաս իշխան յաջողին Ռուսական կառավարութեան որոշումը ստանալ, որուն համար 1806 դեկտեմբեր 17'ին պաշտօնական դիմում ալ ըրած էր Եփրեմ եպիսկոպոս։ Բայց Ռուս կառավարութիւնը քաղաքական տեսակէտով չէր կրնար գործին պաշտօնական ընթացք տալ, քանի որ Երեւան ու Էջմիածին իւր իշխանութեան ներքեւ չէին* (ՋԱՄ. Բ. 149)։ *Այդ վերջնական որոշումին լուրը Ներսէս բերաւ, երբոր Էջմիածին եկաւ 1808 մարտին, և ուղղակի իրենց կողմէ գործադրելու սահմանականութիւնը զգացուց, և եպիսկոպոս ձեռնադրուելով, ու իբրեւ գրագիր կամ ատենադպիր՝ հայրապետական գործունէութեան գլուխ կանգնելով, ձեռնարկեց պէտք եղածը նախապատրաստել։ Խնդիրը միաբանութեան հաղորդուեցաւ պաշտօնապէս, և միաբանութիւնը 1808 ապրիլ 25'ին յատուկ հանրագրութեամբ, ոչ պարզ հաւանութեան, այլ շնորհակալութեան* ուղերձ *մը մատոյց կաթողիկոսին, հաստատուելիք կարգադրութեան մասին։ Ամիս մը եւս անցաւ անոր վրայ, մինչեւ որ պատրաստուեցան գրութիւններ ու ծրագիրներ և ուրիշ պատրաստութիւններ լրանան, և մայիս 25'ին, Հոգեգալստեան երկուշաբթի օրը հրատարակութիւնը կատարուեցաւ Մայրտաճարի մէջ հանդիսաւոր արարողութեամբ։ Խորհրդաւոր էր նշանակուած օրը, զի ճիշդ հինգ տարի առաջ 1803'ին, օրը օրին և տօնը տօնին, մայիս 25'ին և Հոգեգալստեան երկուշաբթին էր, որ Դաւիթ՝ Դանիէլին մորուքը գերծելու նախատական բռնութիւնը կատարած էր* (§ 2277)։ *Մայիս 25'ին էր կատարած Բագրեւանդի օծումն ալ վեց տարի առաջ, բայց եօթնեկի օրն ու տօնը տարբեր* (§ 2266)։ *Նախ կոնդակաձեւ գրութիւն մը կարդացուեցաւ, որուն մակագիրն էր.* Բան յաղագս վերահաստատութեան բարեկարգութեան կառավարիչ սուրբ ժողովոյ յԱրարատեան գերագահ աթոռոյն Ամենայն Հայոց, ի կաթողիկէ եկեղեցւոյ սուրբ Էջմիածին (Դիվ. Բ. 222)։ *Անոր մէջ կը կրկնուէին Մարաղայէ տրուած, 1806 յուլիս 10'ի կոնդակին միտքերը, և Դանիէլ* յանդիման սրբութեան սեղանոյն *կը յայտարարէր, ենթադրել* օրինաց և պատուիրանաց սրբոց՝ ուղղութեան կանոնաց և գործոց *իւրոց, և* կամաւոր մտօք *կը շնորհէր ժողովոյն՝* ազատօրէն և անբռնադատ խորհել վասն ամենայն հարկաւորութեանց բարեկարգութեանց (Դիվ. Բ. 223)։ *Գործին աւելի նշանակութիւն աւելցնելու համար՝ Մայրտաճարին մէջ իսկական ստորագրութեամբ երդմնագիր մըն ալ կ'արտասանէր և կը յանձնէր ժողովին, որուն մէջ ընդարձակ կերպով բացատրուած էր իւր բռնելիք ընթացքը, վարելիք իշխանութիւնը և ժողովին որոշումներուն համակերպութիւնը* (Դիվ. Բ. 223)։ *Կաթողիկոսէ ետքը երդուընցան* Բարձրագոյն խորհրդարանի վեց նորահաստատ անդամները (Դիվ. Բ. 226), *հաւատարմութեամբ և արդարութեամբ պաշտօննին վարելու համար. և ամէնէն վերջը երդուընցան միաբանութեան անդամները, 7 եպիսկոպոս և 15 վարդապետ, խղճի մտօք յարգելու և հպատակելու կաթողիկոսին և ժողովին, հաստատուած կանոններուն և տրուելիք որոշումներուն* (Դիվ. Բ. 228)։

ՍԻՆՈԴԻ ԿԱԶՄՈՒԻԼԸ

*Քանի մը քահանաներ ալ ժամանակցեան երգումին, իբր ներկայացուցիչք քահանայական դասուն։*

**2295.** *Ժողովականներուն թիւին համար նախատեսուած էր որ վեցէն պակաս տան չէց* (ԴԻԻ. Բ. 201), *և այս առաջին անգամ ալ մայիս 25'ին վեց անդամներ յիշուած կը գտնենք* (ԴԻԻ. Բ. 226), *առանց անունները տալու։ Սակայն քիչ ետքը սեպտեմբեր 5'ին է Քուրջիֆոյն խորհրդարան գրուած պաշտօնագիրի մը ներքեւ 7 անուններ կը կարդանք, և են Բարսեղ, Յովսէփ, Յովհաննէս, Ստեփանոս, Ալեքսան, Ներսէս և Ոսկեթէոս եպիսկոպոսներ* (ԴԻԻ. Ե. 618). *որոնցմէ մէկը, հաւանաբար վերջինը, մայիս 25'էն ետքը աւելցուած պիտի ըլլայ։ Սուրբ ժողովին, կամ Կառավարիչ ժողովին, կամ Բարձրագոյն Խորհրդարանին, կամ Սրբազան Սինոդոսին, և աւելի ճշդութեամբ՝ Կաթողիկոսական Խորհուրդին անդամներուն թիւը կանոնագիրին մէջ որոշուած չէր, ուստի պարագաներու համեմատ աւելցաւ կամ նուազեցաւ, և մինչեւ 11 ալ եղաւ երբեմն։ Առձեռն ներքին կանոնագիր մը կազմուեցաւ 22 յօդուածներով, որուն մէջ պաշտօնական կոչում կ'որոշուի՝ Սուրբ Ժողով, և Սուրբ Ժողովի անդամներ, և կը հրամայուի միշտ Խաչն ու Աւետարանը ու Կանոնագիրքը մէջտեղ ունենալ։ Նիստերը ամէնօրեայ պիտի ըլլան, բացի կիրակիներէ մեծահանդէս տէրունիներէ, սրբոց մեծ տօներէ, նաւակատիքներէ, մեծ բարեկենդանէ, ու այլ այսպիսի օրերէ։ Անդամներուն կարգը պիտի ըլլայ ինչպէս եկեղեցին կը կանգնին։ Իսկ կանոններուն մեծագոյն մասը, 6'րդէն մինչեւ վերջինը, խօսելու և վիճելու ձեւերով կը զբաղի, որպէսզի սուրբ ժողովը արբեցողների ժողովի նման չդառնայ* (ԴԻԻ. Բ. 228-232)։ *Ժողովին գործունէութենէն յիշատակներ չունինք ձեռուընիս, և կ'անգիտանանք ալ, թէ Մայրաթոռի դիւանը այդ առաջին սկզբնաւորութեան ժամանակէն աւանդագրութիւններ պահուած ունի՞ արդեօք։ Ամէն առթի մէջ ժողովը Դանիէլի օրով երկար պաշտօնավարութիւն չկրցաւ ունենալ, զի կազմութենէն քանի մը ամիս ետքը Ռուսաց և Պարսից պատերազմները վերսկսան, Էջմիածին շփոթութեանց մատնուեցաւ, և Դանիէլ ալ բռնադատեալ Երեւան փոխադրուեցաւ, ուր և վախճանեցաւ նոյն 1808 տարին, հոկտեմբեր 9'ին* (ՃԱՀ. Ա. 234)։

ԳՈՐԾԵԼՈՒ ՊԱՅՄԱՆՆԵՐ

**2296.** *Երբոր Մայրաթոռի մէջ խորհրդարանի մը հաստատութեամբ՝ վերջ կը տրուէր կաթողիկոսին անձնական և անձնահաճ իշխանութեան, բնական էր որ պիտի ընդարձակուէր խորհուրդի անդամներուն գործունէութիւնը։ Միւս կողմէն հնար չէր, և երբեք ալ եղած չէ, որ համահաւասար գործունէութիւն յայտնուի իւրաքանչիւր անդամի կողմէն, և բնական էր որ ուժգնով ու կարողութեամբ առաւելութիւն ունեցողներ, առաւելագոյն դեր վարէին, և աւելի աչքի զարնէին։ Նորահաստատ ժողովին անդամներէն աւելի զրուցուածներն են երկու Աշտարակեցիները, Բարսեղ և Ներսէս, առաջինը իբր երիցագոյն և նախանդամ, և երկրորդը իբր երիտասարդագոյն և արտասովոր թափով գործունեայ։ Դաւիթի ջատագովներ կը մեղադրէին և կը մեղադրեն այդ երկուքը՝ և կը պնդեն, թէ Ներսէսը Էջմիածնում կատարեալ բռնաւոր դարձաւ, թէ Դանիէլ անուամբ էր միայն կաթողիկոս, թէ եղած էր որպէս խրտուիլակ՝ Ներսէսի և Բարսեղի ձեռքին խաղալիք, զի Ներսէսին ոյժ էր տուեր և Բարսեղ* (ԴԻԻ. Է. ԼԲ)։ *Բայց այդ խիստ դատաստանը ինքնին կը ցնդի, երբոր գիտենք, թէ Դանիէլի պաշտօնավարութեան առաջին 10 ամիսներուն Ներսէս Էջմիածինէ բացակայ էր, թէ գալէն երկու ամիս ետքը ժողովը կազմուեցաւ, և թէ կազմուելէն ետքը հազիւ չորս ամիս կրցաւ գործել ժողովը Դանիէլի առէն, պատերազմի շփոթ օրերն ալ մէջը ըլլալով։ Հետեւաբար շատ պզտիկ բռնաւորութիւն մը եղած կ'ըլլար Ներսէսի վարած բռնապետութիւնը։ Բարսեղի անունն ալ կցելը, արդարացում կը դառնայ Ներսէսի, զի Բարսեղ նախանդամ էր, և կաթողիկոսի մտերմութեան և հիւանդութեան պատճառով, օրինաւորապէս իբր գործադիր իշխանութեան աւանդապահ կը ներկայանար, և Ներսէս օրինաւորութեան սահմա-*

ՍԻՆՈԴԻ ԱՐԴԻՒՆՔԸ

նին մէջ կը մնար Բաղէշի հետ գործելով։ Դժուար կացութեան, անկարգ և խառնակ և չփոթ վիճակի մէջ էր Էջմիածին, երբոր գործի ասէր կը դառնար Դանիէլ. բացառիկ պարագաներ բացառիկ միջոցներ կը պահանջէին, և նոր բան մը չէր ըլլար, եթէ կաթողիկոս և ժողով բացառիկ և ուժգին միջոցներու դիմէին կարգուսարք, ձեռնկանոն վերահաստատելու համար։ Եթէ այդ պարագաներու մէջ Ներսէս աւելի գործունէութիւն ցուցուց, պարզապէս իր անձնական կորովութեան և անխոնջ աշխատասիրութեան հետեւանքն էր։ Չենք կը նկատենք նաեւ միւս մեղադրանքը, թէ այդ քանի մը ամիսներու միջոցին, և ոչ իսկ արտաքին անբարեկարգութիւնն ու անկարգութիւններն անհետացան (ԴԻՒ. Լ·ԺԲ), զի ոչ միայն դիւրին չէր քանի մը ամիսներու չփոթ կացութեան միջոցին՝ մեծ արդիւնաւորութիւն ունենալ, այլ այս բաղձեր խառնուած կ'ըլլան, թէ Դաւիթ իր վեցամեայ պաշտօնավարութեամբ, միայն անբարեկարգութիւն և անկարգութիւններ թողած է իր ետեւէն։ Թող որ անարգելի բաներ չեղան, միաբանութիւնն ու գոյքերը հաւաքել և ամփոփել, միաբանական կեանքը վերանորոգել, և որ աւելին է՝ խորհրդակցական կամ ժողովական կառավարութիւն հաստատել, որուն համար օրէն չէ ըսել, թէ եկեղեցւոյ շահերէն վնասակար եղաւ, վասն զի եկեղեցւոյ հնաւանդ կանոններուն համաձայն էր. և ոչ ալ հայրապետական իրաւունքներու սահմանադրութիւն մը նախագծեց (ԴԻՒ. Լ·ԺԲ), զի Հայոց եկեղեցին չճանչնար հայրապետներու անկոպար և անկանոն, բացարձակ և անձնական պաշտօնավարութիւնը։ Եթէ սահմանադրութիւն նախագծել ըսելով՝ 1836ի պետական կանոնադրութեան կ'ակնարկեն, արտաքարանական չէ երեսուն տարիներ առաջ եղած խորհրդութիւն մը, երեսուն տարի առաջուան գործիչներուն վրայ բեռցնել։ Այդ կէտը կը թողունք իր կարգին լուսաբանել։

**2297**. Մեակ պատմական պարագայ մը, որ ծանրածանր մեղադրանքներու իբր փաստ յառաջ կը բերուի, Դաւիթի վրայ օր մը կատարուած բռնական գործն է։ Բայց նախապէս պէտք է յիշենք, թէ Դանիէլ և Դաւիթ նիէլեանք մինչեւ այն օրը, ոչ մի կերպով Դաւիթի անձին դէմ հակառակութեան կամ նեղութեան գործ մը ըրած չէին, եթէ բանի ձեռք ձգուած և բռնութեամբ պահուած կաթողիկոսութեան՝ բանի ձեռքէն առնուիլը, անիրաւութիւն բռող կամ կարծող չգտնուի։ Կը պատմուի, թէ երբոր Դանիէլ փառաւորութեամբ Երեւանէ Էջմիածին պիտի գար, Հիւսէին Սարտար՝ պաշտօնի փոխանցումին օրը Դաւիթէն կրած անարգանքին վրայ բարկացած (§ 2290), հրամայած ըլլայ զայն թողուն և թողոյ ձեռն ընթացացանել յաստիճանս երկնաւորին ձեռնաւ ընծայածին (ՊԼՐ·54)։ Պատմուածին ստուգութիւնը չենք երաշխաւորեր, զի ականատես մը չէ պատմողը, բայց այս ինչ ստոյգ է, թէ Դանիէլ ուզեց և կարգադրեց որ Դաւիթ համաձայն ընկերութեամբ իրեն ուղեկցի, և ուրիշներէ ալ յարգուի, ինչպէս յիշեցինք (§ 2292)։ Էջմիածինի մէջ ալ թողուց միւս եպիսկոպոսներու կարգին համարձակ և ազատ կեանք վայելել, և ապրիլ ինչպէս որ ուզէ, ոչ ներսի Լազարապատը փակեց, ոչ յարաբերութիւններէ զրկեց, և ոչ չարթիներու պահպանութեան ենթարկեց, որ կերպով Դաւիթ իրեն հետ վարուած էր (§ 2273)։ Դանիէլ այդչափ ազատութիւն ներելուն համար՝ պարտաւոր եղած էր միաբաններուն դայրոյթն ալ զսպել, և քննախնդրութիւննին սանձել, զի անոնցմէ ամէն մէկը դեռ չէր մոռցած Դաւիթէ կրած խոշտանգանքները և հալածանքները, բռնաբարութիւնները և զանարգութիւնները։ Եթէ մէկն ալ կար որ նուազ զանգատելու ու վայրանալու պատճառ ունէր, Ներսէսն էր, որ Դաւիթի բռնութիւններէ ազատ մնացած էր. բայց ան ալ իր ընկերներուն զգացումներուն մասնակից էր, և անոնց փափաքները տեղը տանելու ճարպիկութիւնն ունէր։ Դաւիթին գլուխը փորձանք մը բերելու, և իրենց կրած տուածները՝ անոր ալ կրել տալու ձգտումը ընդհանուր էր միաբաններուն մէջ. միայն Դանիէլի անյիշաչար բարեսրտութիւնը՝ և իրեն հանդէպ տիրող պատկառանքն էր, որ ամէնքը կը կասեցնէր, և 1807 մայիսէն մինչեւ 1808 սեպտեմբեր, Դաւիթ

ԴԱՒԻԹԻ ՀԱՆԴԷՊ

*բանէ մը ցաւելու կամ զրկումի մը համար զանգատելու առիթ չէր ունեցած, մինչեւ իսկ իր սենեակին, հանդերձանքին, կերակուրին և սպասարկութեան յատուկ մտադրութիւն կը դարձուէր։ Բայց կ'երեւի թէ որչափ ալ Դաւիթ հանդարտ կ'երեւէր, ներքին զգացումները բոլորովին հանդարտած չէին, և Դանիէլի դէմ դժկամակ մտայնութիւնը իր սիրտին մէջ կը տիրէր տակաւին։ Պատահական առիթ մը մէջտեղ հանեց այդ տրամադրութիւնը։*

**ԲԺՇԿԱՐԱՆԻ ՄԻՋԱԴԷՊԸ**

**2298**. *Դանիէլ չարունակ հիւանդկոտ և տկար էր, և ամէնն ալ այն միտքը ունէին, թէ՝* Աստուած գիտէ ողջանալն (Դիւ. Ե. 621)։ *Առաւելագոյն տագնապ մը ունեցաւ* 1808 *օգոստոսին վերջերը, որ իբր կոխուած մը կամ կաթուածի հետեւանք կը յիշուի* (Դիւ. Է. լԲ)։ *Կաթողիկոսը խնամող բժիշկը Նահապետ է կոչուած* (ՄՍՐ. 73), *բայց անոր հետ ուրիշ մըն ալ կը բերուի, Թօփալ Յովհան Նորգեղցի, որ* ընտրեալ էր բժշկարան, և խոստացաւ յօջանել տէր ըստ ողորմութեանն և զօրեղն նորա (Դիւ. Ե. 621)։ *Ուզած գիրքը Ամիրտօվլաթի բժըշկարանն էր, որ Դաւիթի քով գտնուելուն* (ՄՍՐ. 73), *Գրիգոր վարդապետը կը ղրկեն ուզել* (Դիւ. Ե. 621)։ *Դաւիթ կը զլանայ գիրքը յանձնել։ Պէտքին ստիպողականութիւնը և Դաւիթին տմարդի զլացումը, կիրքերը կը գրգռեն, և սանձուած զայրոյթին պոռթկալու առիթ կու տան։ Երկրորդ անգամ գիրքը կ'ուզեն վեհէն կամ գործակալ Գրիգոր եպիսկոպոսի ձեռքով, և երբ անոր ալ կը զլանայ, գործին օրինական ձեւ տալու համար, ժողովը եօթը ստորագրութիւններով* (§ 2295) *հրամանագիր մը կ'ուղղէ Դաւիթին*. Սուրբ ժողովս Բարձրագոյն Խորհըրդարանի յայտնէ Ձերում սրբութեան, զի Բժշկարանն սրբոյ աթոռոյս որ առ Ձեզ է, առաքեսջիք ընդ սոյն գրաբերիս, քանզի կայ առաջնեան մեր սրբազնակատար պէտան հարկաւոր է այժմիկ (Դիւ. Ե. 618)։ *Գիրը* 1808 *սեպտեմբեր 5 թուական կը կրէ* (Դիւ. Ե. 619), *որ կը ճշդէ պատահարին օրը, և կը պատասխանէ Աաչի բարեկենդանին նախընթաց շաբաթ օրուան։ Գրութեան մէջ սպառնալիք չկար, և դարձեալ եթէ գիրքը Դաւիթի և ոչ Մայրաթոռի սեփականութիւն ալ ըլլար, ինչպէս Դաւիթի ջատագովները կը թելադրեն, մարդկային ամենատարրական զգացումը պիտի չներէր, ուրիշի մը առողջութեան պարագային՝ այսպիսի բծախնդրութեանց դիմել, որք իսկապէս տեղի ալ չունէին։ Նորէն Դաւիթին գացողը Գրիգոր եպիսկոպոսն է, բայց Դաւիթ նորէն կը զլանայ, ժողովին հրամանագիրը կը պատռէ, Ներսէսի դէմ ալ կը զայրանայ՝* Անիծեալ լինիս *հայհոյութեամբ, ժողովն ալ կ'անարգէ ըսելով.* Մի քանի կամ խռովեցուցանէք զիս այսպէս, և ինչ որ կամիք էք, նոյն արարէք էք (Դիւ. Է. Խ)։ *Կաթողիկոսի հիւանդութեան հանդէպ թշնամական ընթացքը, հայհոյալից խօսքերը, ժողովին նախատուիլը, և հազիւ զսպուած հին ցասումը, կը բորբոքին և միաբանները կը զայրացնեն, եպիսկոպոս և վարդապետ, հրացանակիր և սպասաւոր, Դաւիթին սենեակը կը խուժեն, Ներսէսին տուած հարուածը՝ Դաւիթը կը գլորէ* (Դիւ. Է. Խ), *Ստեփանոս Ենոքեան եպիսկոպոս, ժողովականներէն մին, անոր առատ մօրուքը կը խուզէ, մինչեւ* Յովհաննէսին Բաղնոյ *կոչուած սենեակը բռնի կը տանին, մօրուքը սափրիչին գերծել կու տան, և* դրանապանին *խուցն կը փակեն, Մելքոն Ղարաբաղցի հրացանակիրին պահպանութեան ներքեւ, որ յատուկ կիրք ալ ունէր Դաւիթի դէմ. զի ժամակին իւր կինը ըԱկել տուած էր, Ենոքեանը Էջմիածինէ փախուցած ըլլալուն համար* (ՄՍՐ. 74)։ *Դաւիթի սենեակը խուզարկուելով Բժշկարանը կը գտնուի և բըժիշկին կը յանձնուի* (ՊԷՐ. 65)։ *Դանիէլ եղածը լսելով կը ցաւի, և միաբանները կը յանդիմանէ, անկողինին մէջէն Դաւիթը ազատելու հրամաններ կու տայ, բայց կ'երեւի թէ չեն գործադրուած, զի ութ օր մնացած է Դաւիթ արգելարանին մէջ, զըրկումներ ալ կրելով, որոց մէջ չըթաներ և զզուելի կերակուրներ ալ կը յիշուին* (Դիւ. Է. Խա)։ *Մենք ոչ մի կերպով պիտի արդարացնենք Դաւիթի վրայ գործածուած բռնական արարքը, որչափ ալ դատապարտելի ըլլայ անոր տմարդի և անխիղճ զլացումը։ Սակայն այն մեղադրանքը զոր կը յայտնենք Դանիէլեանց վրայ, կրկին և երեքկին սաստկութեամբ կը դառնայ Դաւի-*

*թին վրայ, զի իր վրայ գործուածը՝ մէկ տասներորդն իսկ չէր, այն ամէն խոշտանգանքներուն՝ զորս Դանիէլի (§ 2274, 2277) և միաբաններուն (§ 2264, 2265) վրայ կատարած էր ինքն երկար տարիներով:*

**2299**. *Երբոր Դաւիթի արկածին լուրը Երեւան հասաւ, Բարսեղ եղբայրը և անոր Աբրահամ անեբը՝ եղելութիւնը Հիւսէյինի ներկայացին, իբրեւ անսաստութիւն անոր հրամաններուն դէմ* (§ 2292):

ԴԱՒԻԹԻ ԸՆԹԱՑՔԸ

*Սարտարն փութաց անձամբ Էջմիածին գալ սեպտեմբեր 6ին, իբր է տօն օծմանն Դանիէլի* (ԴԻԻ. Ե. 621): *Հոն հասնելով, ութը օրէն* (ԴԻԻ. Է. Խ) *Դաւիթը արգելարանէն հանել կու տայ, նախապէս ապահովելով Դաւիթի խոստացեալ քէշիշն* (ԴԻԻ. Ե. 621), *մօրուքը ածիլողները պատժելու համար քննութիւն ալ կ'ուզէ բանալ, բայց կը հանդարտի երբոր եղելութեան կաթողիկոսին հրամանով եղած ըլլալը իրեն կը հաւատեն, և Դանիէլն ալ զայն կը հաստատէ: Այսուհանդերձ Դանիէլեանք ալ կը ստիպուին տալ Սարդարէ դիւանաւ ընծայս և դժուարու դրամոց, և այնպէս դադրեցուցանել զնոյեալ: Հիւսէյին մէկտեղ Երեւան կը տանի Դաւիթը, որ անշուշտ ամէն միջոց գործածած էր Հիւսէյինը այդ բանին համոզելու համար: Այսպէս Դաւիթ սեպտեմբեր 5էն սկսած ութօրեայ բանտարկութենէն ետքը, Երեւան կու գայ և Բարսեղ եղբօրը տունը կը տեղաւորուի: Այս միջոցին նորէն սկսած էին Ռուսներու և Պարսիկներու պատերազմները: Աղեքսանդր Ա Ռուսիոյ կայսրը, 1807 յուլիս 8ին Գաղղիոյ Նաբոլէոն կայսեր հետ հաշտութիւն կնքելուն վրայ, պատեհ գտած էր իր տիրապետութիւնը ընդարձակել հիւսիսէն Տաճիկներու և հարաւէն Պարսիկներու դէմ, և 1808 սեպտեմբեր 15/27ին ալ Էրֆուրթ* (Erfurt) *կը հանդիպէր Նաբոլէոնի հետ անձամբ տեսակցելով երկկողմանի ձեռնարկներու ծրագիրը ընդարձակելու: Թուականը ճշդիւ կը համապատասխանէ Էջմիածինի մէջ տեղի ունեցած Դաւիթի արկածին, և Երեւան փոխադրուելուն: Աբբաս Միրզա արքայորդին, Ատրպատականի և Հայաստանի գաւառներուն կողմնակալ և բանակին հրամանատար, նոյն օրեր կը հասնէր Երեւանի պաշտպանելու Ռուսներուն դէմ, որք Գուտովիչի զօրապետութեամբ քաղաքին դէմ կը յառաջէին: Դաւիթ հազիւ Երեւան եկած, կը փութայ երթալ Խորվիրապի դաշտը, ուր հասած էր Պարսից բանակը, և Աբբաս Միրզայի առջեւ Դանիէլն ու Ներսէսը կ'ամբաստանէ, իբրեւ թէ անոնք են գրեալքն Ռուսաց և ատեալն է վերայ Պարսից: Հետեւանքը կ'ըլլայ որ Աբբասի հրամանով և Հիւսէյինի ձեռքով, Դանիէլ իբրեւ կասկածաւոր կը փոխադրուի ի բերդն Սարդարայ՝ հիւանդութիւն անձամբ, իսկ Ներսէս Պարսից բանակը կը տարուի, ուր Աբբաս զայն հարցուփորձի կ'ենթարկէ ըղձոփանցելոց գոլութեան Ռուսաց, և կը յայտնէ զբռնութիւն Դաւթի* (ՄՍՐ. 75):

**2300**. *Այդ ամէն շփոթութեանց մէջ միաբանութիւն սկսած էր մտահոգ ըլլալ, թէ որչափ ալ Դանիէլ աթոռին տիրացած էր, սակայն անոր տկար և հիւանդագին վիճակը նախատեսել կու տար, թէ երկար պիտի չկարենայ ապրիլ, և աթոռի մօտալուտ պարապութեան պարագային, կրնար ըլլալ որ Դաւիթ, իբրեւ արդէն օծեալ կաթողիկոս, նորէն աթոռին տիրանար. մանաւանդ եթէ անգամ մըն ալ իր քաղաքական վարմունքը փոփոխելով, Ռուսական հովանաւորութեան ապաւինէր, ինչպէս առաջին անգամ ալ օգտուած էր* (§ 2245): *Միաբանութեան մէջ այդ մտածումները հետզհետէ կը զօրանային Դանիէլի վերջին հիւանդութեան վրայ: Այդ տեսութեամբ 1808 սեպտեմբեր 5 օրը, միաբանք ժողովեալ էին և գիր արարին կը պատրաստէին կաթողիկոսին ուղղուած, որ Սիրեմք լինել կաթողիկոս յետ չէր: Ճիշդ այդ միջոցին էր, որ խաղաղն լուծին, որ երբեք ոչ գամ մարդ քնոյ, և Դաւիթն Բժշկարանն շտապով* (ԴԻԻ. Է. 621): *Ասոր վրայ հանդիպածը արդէն պատմեցինք* (§ 2298). *և զուգադիպութիւնը լաւ կը բացատրէ միաբանական գայրոյթին բորբոքումն ու սաստկութիւնը: Գիրին պատճէնը ունինք* (ԴԻԻ. Է. 619), *որուն ներքեւ ստորագրած են 5 եպիսկոպոսներ, Ստեփաննոս, Մարտիրոս, Յովհաննէս, Գրիգոր և Յակոբ, և 17 վարդապետներ, իսկ եօթը ժողովական եպիսկոպոսները՝ իբրեւ*

ՅԱՋՈՐԴԻ ՈՐՈՇՈՒՄ

*գործադիր իշխանութիւն դուրս մնացած են։ Միաբաններ ընդարձակօրէն շնորհակալութիւն կը յայտնեն արքայորդի Ապպասի և կուսակալ Հիւսէյինի, որ Դաւիթը հեռացուցին և Դանիէլը նստեցուցին, բայց տեսնելով որ սրբազնակատար տէրդ մեր է հիմնադրութեան նոյ, որչափ ալ կը յաւելուն թէ դոյն Տէր զի երկրորդոյն առաւել չէր, այլ ընդ որում է մահկանացու վիճակի կամք ամենեքեան, կ'առաջարկեն որ յետ Տեր մեր կաթողիկոսն՝ Եփրեմ սրբազանն լինիցի, ինչպէս որ կանուխէն ալ ընտրուած ու ծանուցուած էր։ Եւ կը խնդրեն որ հաստատեսցեն գրով Շահզադայն և Հէյտէյին խան Սարտարին մամուրութեան տրուն իրենց, որպէսզի Դաւիթն մի անգամ ամենեւին չլինիցի իշխանութեան կաթողիկոսական* (ԴԻԻ. Է. 620)։ *Յայտնի է թէ Դանիէլի համար ասկէ ընդունելի առաջարկ չէր կրնար ըլլալ, մինչեւ անգամ կ'երազէր իւր յետով ածել Եփրեմին, ու գահը նրան յանձնելով, ապա հանգիստ խփել աչերը* (ԵՐՑ. Ա. 41)։ *Սակայն նոյն օրը տեղի ունեցաւ Դաւիթի պատահարը, որուն յաջորդեցին Դաւիթի հեռանալը, ու Պարսից արքայորդւոյն դիմելը, և Դանիէլի Երեւանի բերդը փակուիլը* (§ 2298), *զոր պէտք է դնել չուրջ սեպտեմբեր 20'ին։ Նոյն օրերն էր որ Ներսէս ալ հարցափորձի կ'ենթարկուէր Ապպաս Միրզա արքայորդւոյն վրանին մէջ, Խորվիրապի մօտերը։*

**2301**. *Ներսէս հանդարտութեամբ լսեց Դաւիթի կողմէն իրենց դէմ եղած ամբաստանութիւնը, իբրթէ Ռուսերը Պարսից դէմ գրգռող ըլլային. հերքեց եղած զրպարտութիւնը, և երկու ժամի պայմանաժամ խնդրեց ու ստացաւ՝ իրենց արդարացման փաստը ներկայելու։ Իսկոյն դարձաւ Էջմիածին, գտաւ 1804'ին Դաւիթէ Ցիցիանովի գրուած նամակը, և փութաց դառնալ և Ապպասի ներկայացնել եղրակացնելով, թէ Տեսէք ՞ է հրամայէջն Ռուսաց, ես, թէ դու ինքն Դաւիթ* (ՄՍՐ. 75)։ *Հաւանաբար այդ միեւնոյն 1804 յունիսին Ցիցիանովի գրուած նամակն է* (§ 2280), *որուն թէպէտ ամսաթիւը չկայ* (ԴԻԻ. Է. 428), *սակայն յունիսի վերջերը պիտի հաշուուի, զի 20'ին էր Ցիցիանովի Շրէշ հասնիլը* (§ 2278)։ *Այդ գիրով Դաւիթ կը յայտարարէր, թէ Ուրախ եմ յոյժ և ցնծամ և շնորհակալ ըստ Ներքին առաջնորդութեան Հոգւոյ և աներեւոյթ ըղձութեան կամաց, ընդ ցանկալի և փրկութենաբեր ընկալութեան ձեր, և ընդ տէրապետական յաղթութեան, և կը յաւելուր, Աստ մեր և ամենեցուն հաստատեսցեն եղիցի է լոյս, և օրհնեալ և խնկարկեալ է Թագաւորութեամբ մեծ ձեր յերկիր* (ԴԻԻ. Է. 427)։ *Այդ յայտնութիւնը պայրացուց արքայորդին, վասնզի կը մերկացնէր թէ Դաւիթ զինքն կը խաբէր նոյնիսկ այն միջոցին, երբ զինքն իրենց անձնուէր և Ռուսաց ոխերիմ կը ցուցնէր։ Ներսէս այդ յայտնութեամբ Դաւիթի կործանման վճռական հարուածը տուած եղաւ, զի այլեւս Դաւիթ չկրցաւ Պարսից պաշտպանութենէն օգտուիլ։ Ապպաս այնչափ զայրացաւ Դաւիթի դէմ, որ Ներսէսը արտօնեց զի վարեսցէ ընդ նմա որդւոյ և կամեսցէ. բայց Ներսէս չուզեց առիթէն օգտուելով նոր նեղութիւն տալ Դաւիթի, որ կ'երեւի թէ Ապպասի ներկայութեան ալ եկած էր, և չէր կրցած իւր գրածը ուրանալ, զի կ'ըսուի, թէ Ներսէս թոյլ ետ Դաւթի ձեռաւ նորին է տան եղբօրն յԵրեւան։ Ներսէս յօգուտ գործածելով Ապպասի առջեւ վաստկած վստահութիւնը, անոր ներկայեց Եփրեմի յաջորդութեան խնդիրը* (ՄՍՐ. 75), *միաբանութեան կամքին համեմատ* (§ 2300), *և հաւանութիւնը ստացաւ, հրամանագրոց ձեր ալ ձեռք ձգեց յանուն Եփրեմայ, և Էջմիածին դառնալով Ոսկէոս եպիսկոպոսը՝ ժողովականներէն մին, հարկաւ ժողովական որոշմամբ, ճանպայ հանեց դէպի Ռուսաստան, որ Ապպասի պաշտօնագրին զօրութեամբ օր առաջ Եփրեմը Էջմիածին առաջնորդէ* (ՄՍՐ. 75), *և յաջորդութեան խնդիրը լրացեալ գործողութեան կարգ անցնի։*

**ՆԵՐՍԷՍ ԱՐԴԱՐԱՑԵԱԼ**

**2302**. *Պէտք է ենթադրել, թէ Ներսէս արտօնութիւն ալ ստացած ըլլայ Դանիէլը Երեւանի բերդին արգելարանէն ազատելու, բայց Դանիէլ հիւանդագին վիճակի մէջ Մայրաթոռէն բերդ տարուած ու փակուած ըլլալով, դժբախտաբար վիճակը հետզհետէ աւելի ծանրացած էր արգելարանին մէջ, և հոն մնալէն ետքը հազիւ երկու շաբաթ եւս կրցաւ ապրիլ անյոյս վիճակի մէջ, և կեանքը կըն-*

**ԴԱՆԻԷԼԻ ՄԱՀԸ**

*քեց 1808 հոկտեմբեր 9'ին (ՇԱՀ.Ա.234), որ կ'ինար Խաչի չորրորդ եօթնեկի ուրբաթին։ Երեւանի մէջ գտնուող միաբաններ և եկեղեցականներ յուղարկաւորութեան կարգը կատարեցին, բայց թաղել չուզեցին, այլ* զմոռնալով պահեցին ի փողանակէ, պատեալ բեհեզօք և շուրջառովք *(ՊէՐ. 65), որպէսզի կարենան առաջին առթիւ Էջմիածին տանիլ և Մայրտաճարին հովանւոյն ներքեւ հանգուցանել։ Դանիէլի մահուան օրերը դեռեւս Երեւան պաշարուած էր Ռուսներէն, և հնար չէր հանգուցելոյն մարմնին փոխադրութիւնը կատարել։ Դանիէլի կաթողիկոսութիւնը 1807 մայիս 14'էն համրելով, միայն 17 ամիս տեւած կ'ըլլայ. իսկ 1802 մայիս 25'ի Բագրեւանդի օծումէն համրելով վեց ու կէս տարի, թէպէտ մենք առաջին հաշուով միայն անցուցինք զայն կաթողիկոսաց գաւազանին, իրաւական տեսակէտէն աւելի, իրականին և գործնականին հետեւելով։*

**ԴԱՆԻԷԼԻ ԱՆՁԸ**

*2303. Դանիէլի անձին վրայ մեր դիտողութիւնը յայտնել ուզելով, նախեւառաջ պիտի յիշենք, թէ բոլոր իւր վրայ գրողներ, համակիրներ և հակակիրներ, համամիտ կերպով կը հաւաստեն նորա բարեսէր և բարեսիրտ բնաւորութիւնը։ Եթէ իւր անունով և իրեն համար եղած ձախող գործեր ու պարագաներ ալ պատմեն, համաձայն են զինքն արդարացնելու և հաւաստելու, թէ առանց իւր կամաց գործուեցան, և իրեն վրայ մեղադրանք կամ պատասխանատուութիւն չեն բերեր։ Այդ համամիտ վկայութիւնը մեծագոյն գովեստն է Դանիէլին համար, անհատապէս նկատուած ատեն, և շատ նշանակելի կէտ մըն է այնպիսի մէկու մը համար, որուն անձն ու անունը ճշմարիտ կռուախնձոր դարձած էր ընդհանուր Հայութեան մէջ։ Անոնք որ կերպով մը նուազել կ'ուզեն Դանիէլի անունին վայելած համակրանքը, բոլոր անցուդարձերը Ներսէսի վրայ կը բեռցնեն, և Դանիէլն ալ անոր ձեռքը ապիկար և գրեթէ անզգայ գործիք մը կը դարձնեն, զուրկ ամէն արժանիքէ։ Սակայն պատմական պարագաներ, զորս մանրամասնօրէն յառաջ բերինք, Ներսէսը կը ներկայեն, ոչ իբրեւ գործին տէր, այլ իբրեւ գործին միջնորդ, զի Դանիէլեան կուսակցութեան գլուխը գտնուողներ, Եփրեմ Ձորագեղցին, Գրիգոր Խամսեցին, Յովհաննէս Գեղարդակիրը, Բարսեղ Աշտարակեցին, Յովհաննէս և Մինաս Լազարեաններ, և ուրիշներ, Ներսէսը վարելու կարող, և ոչ Ներսէսէ վարուելու զիջող անձեր էին։ Նոյն իսկ այն մանրավէպերը զորս խնամով հաւաքած ենք, իբրեւ Ներսէսի ու Յովհաննէսի (ԴԻԻ. Է. լէ.), և Ներսէսի ու Եփրեմի (ՄՍՐ. 79) միջեւ անհամաձայնութեան նշաններ, մեր ըսածը կը հաստատեն, թէ անոնք Ներսէսի ձեռքը խաղալիք դարձած խրտուիլակներ չէին։ Հետեւապէս պէտք է ընդունիլ, թէ վերոյիշեալ գլխաւորներ ուղղակի Դանիէլի անձին յարած էին, և եթէ Դանիէլի անձին այնչափ ուժգնութեամբ համակրութիւն կը տածէին, ապա ուրեմն անոր վրայ արժանիք մը տեսած էին։ Իսկ եթէ այդ արժանիքը՝ բարձր կարողութիւն չէր, ուրեմն գերազանց բարութիւնն էր որ ամէնքը իրեն գրաւած էր, և իրեն մէջ ուղղամիտ և ճշմարիտ հայրապետի տիպարը կը կազմէր։*

**ԴԱՆԻԷԼԻ ԱՐԺԱՆԻՔԸ**

*2304. Ասոր հետ մէկտեղ Դանիէլի ընթացքին վրայ կատարուած մանրազնին դիտողութիւններով կը տեսնուի, թէ իրաւցի ալ չէ իբր կատարեալ ապիկար մը ներկայել Դանիէլը։ Ռուսական կառավարութիւնը՝ որ անպայման վստահութիւն դրած էր Դանիէլի վրայ, հնար չէր որ Ներսէսի մը կամ Եփրեմի մը վկայութեամբ կազմէր իւր համոզումը, քանի որ ունէր իւր Կնօրինները, Ցիցիանովները, Գուտովիչները, որոնք իսկութիւնը իրեն կ'իմացնէին, և անմիջական չփմամբ կազմած գաղափարնին կը հաղորդէին։ Վերջին պարագային ալ Պարսից արքունիքը՝ իւր ուղղութիւնը փոփոխելով և Դանիէլը պաշտպանելով (§ 2290), Դանիէլի անձին համար նպաստաւոր վկայութիւն տուած կ'ըլլար,* հաստատած լինելով, որ նորա միաբանութիւնը սիրով կ'ընդունին Ռուսները, *և Պարսից կառավարութիւնը անով կը նպաստաւորուի.* որով Դանիէլ քաղաքական միջնորդի նշանակութիւն կը ստանար երկու տէրութեանց առջեւ *(ԽՐՑ. Ա. 37)։ Դանիէլի նամակագրու-*

թիւնները, և յատկապէս անոնք զորս գրած է Ներսէսին իրեն մօտ չեղած ատենները, հանդարտ և կշռադատ միտքի արտայայտութիւններ են։ Դանիէլի վարչագէտ տեսութեանց իբր փաստ կը նկատենք այն շրջահայեաց արթնութիւնը, որով Պարսից և Ռուսաց կառավարութիւններուն հետ ալ յարաբերութիւններ կը մշակէր Հայ ազգին և Հայ եկեղեցւոյն պաշտպանութեան համար։ Յատուկ գիրեր է ուղղած Գաղղիոյ կայսր Նաբոլէոնի (ԴԻԻ. Ե. 522), և Նախարար Փորթալիսի (Joseph Portalis), զոր մխիթար հաւատոյ և օրինաց կը կոչէ (ԴԻԻ. Ե. 554), նոյնպէս Գերմանիոյ կայսեր հետ (ԴԻԻ. Ե. 556), որ էր Փրանկիսկոս Բ (Franz II)։ Նաբոլէոնի գրելով շնորհակալութիւն կը յայտնէ Ժօմպաթիստ Բուասօ (Jean-Baptiste Boisseau) դեսպանը Էջմիածին յղած ըլլալուն, և կը խնդրէ, զի տէր և տարածեսցէ ուղղափառութեան աթոռոյ ձերոյ կայսերական մեծութեան, եղիցի հովանի ազգի և եկեղեցւոյ Հայաստանեայց (ԴԻԻ. Է. 553)։ Իսկ Ֆրանցի կը յանձնարարէ Սէչով (Suczava) քաղաքը բնակող գաղթն Հայոց, որ կը գտնուի ներքոյ Արարատեան աթոռոյ կաթողիկոսին Ամենայն Հայոց՝ հոգեւորական կանոնօք և եկեղեցական կարգօք։ Կը յիշէ ևս, թէ Գրիգոր անուն սուտ եպիսկոպոս մի 1807 օգոստոսին այնտեղ անհամաձայնութիւն սերմանած է, որով կ'ակնարկէ Գրիգոր Աքքերմանցիին, և կը խնդրէ որ այլեւս առանց վկայական գրոյ կաթողիկոսին Արարատեան աթոռոյ, հոգեւորականներ չընդունուին կայսերական սահմաններուն մէջ (ԴԻԻ. Է. 559)։ Այդ նամակները գրուած են 1808 յունիսին մէջ։ Դանիէլի համար ուրեմն կրնանք համարձակ ըսել, թէ ամէն հնարաւոր միջոցներով ջանաց հոգ տանիլ քանդուած աթոռին շուքը վերականգնեցնելու (ԵՐՑ. Ա. 36), և պէտք է բարեյիշատակ հայրապետներու շարքին մէջ արձանագրել իր անունը։

**ՅՈՎՀԱՆՆԷՍ ՊԱՏՐԻԱՐՔ**

2305. Կաթողիկոսական աթոռին յաջորդութեանց գործերը, մեզ ստիպեցին պահ մը աչքէ վրիպեցնել Տաճկահայ հանրութեան գործերը, գոհանալով պարագաներու յարմարութեամբ յիշել միայն կաթողիկոսական ընտրութեանց մէջ ունեցած մասնակցութիւնները (§ 2223—2232), և պատրիարքներ փոփոխելնին, Յովհաննէս Բաբերդցիի պաշտօնէ դադարիլը (§ 2262), և վերստին պաշտօնի դառնալը (§ 2272)։ Բայց ասոնցմէ դուրս ալ բաւական պատահարներ ունինք, որոնք Տաճկահայ կեանքին համար հետաքրքրական և մեզի համար գիտցուելու արժանի դէպքեր են։ Յովհաննէսի երկրորդ պատրիարքութիւնը տասնամեայէ աւելի տեւողութիւն ունեցաւ, որ եթէ մէկ կողմէն ժողովուրդին յարափոփոխ յուզումներէն յոգնած ըլլալուն հետեւանքն էր, սակայն հնար չէ Յովհաննէսի խոհական և շրջահայեաց վարչականութեան արժանիքն ալ չյիշել։ Հակառակ որ բոլոր աշխարհ ամէն կողմէն խռովութեանց և պատերազմաց մէջ էր ԺԹ դարուն սկիզբները, և նոյն իսկ Տաճկաստան անկայուն վիճակ մը ունէր՝ Ռուսաց հետ պատերազմներուն, և Ռուսաց հակառակորդ Նաբոլէոնի հետ բարեկամութիւն հաստատելուն պատճառով, սով մէկտեղ Յովհաննէսի շրջանը, մայրաքաղաքի Հայութեան համար օգտակար ձեռնարկներու ժամանակամիջոց մը եղած է։ Այդ միջոցէն յանուանէ կը յիշուին Սամաթիոյ Ս. Գէորգ եկեղեցւոյն վերաշինութիւնը և Գասըմփաշայի Ս. Յակոբ եկեղեցւոյն առաջին շինութիւնը, Նարլըքաբուի Ս. Յովհաննէս և Բերայի Ս. Յարութիւն հիւանդանոցներուն վերանորոգութիւնները, իրենց յարակից փոքրիկ եկեղեցիներով (01 ՕՐԱ.175), և շատ մըն ալ թաղական վարժարաններու սկզբնաւորութիւններ կամ բարեկարգութիւններ. զորօրինակ Գումքաբու, Սամաթիա, Ղալաթիա, Բերա, Գարթալ, Պէյքօզ, այնպէս որ այդ միջոցին գրեթէ ամէն թաղ իր վարժարանն ունեցաւ (01 ՕՐԱ.176)։ Ասոնց մէջ պաշտօնավարող ուսուցիչներն ալ՝ անուն և հռչակ և գրական արդիւնքներ թողուցող անձեր եղած են, ինչպէս Մեսրոպ Կարնեցի աւագերէց, Թագւոր Ասլանեան և Խաչատուր Սամաթիացի վարժապետներ, Մատթէոս դպիր և Պօղոս Յովհաննէսեան տպարանատէրներ, որոնց հետ պէտք է յիշուի և Մարգար առաջին գրավաճառ՝ Քիթապճի մականուն առած (01 ՕՐԱ.177)։ Այդ ընդհանուր շարժումը, աշխատաւորներու ձեռնարկութեան և նուիրատուներու քաջալերութեան

հետ, պատրիարքին ընծայած հովանաւորու-թեան ալ պիտի վերագրուի։ Յովհաննէս այդ ընթացքին մէջ, հաւատարիմ և աւան-դապահ հետեւող մըն էր իր վարդապե-տին, Կաղզուանցի Զաքարիա պատրիար-քին (§ 2185)։

2306. Այստեղ ներուի քանի մը տող աւելցնել յատկապէս Բերայի թաղին վրայ, որուն կազմակերպութիւնն ալ Յովհաննէսի ժամանակ

ԲԵՐԱՅԻ ԹԱՂԸ

տեղի ունեցած է։ Կոստան-դնուպոլսոյ պարսպապատ քաղաքին հանդէպ, պարսպապատ Ղալա-թիա մը կար Յունական տիրապետութեան ժամանակէն, Գենուայի Իտալական հան-րապետութեան հովանաւորութեան ներքեւ։ Ըստ այսմ Իտալացիներէն մնացած կ'երեւի տեղւոյն անունն ալ, զի մինչեւ այսօր Քա-լաթա (Calata) կը կոչուին Լիգուրիոյ նա-ւահանգիստներուն ծովափնեայ մասերը կամ քարափները։ Հայոց յատուկ եկեղեցի ալ կար նոյն մասին մէջ Օսմանեան տիրապե-տութենէն առաջ (§ 1484)։ Մայրաքաղաքին մէջ հետզհետէ շատցող Հայութիւնը՝ իրեն գլխաւոր կեդրոններէն մին ըրած էր Ղալա-թիան, որ նախկին Եւրոպական կազմա-կերպութենէն մնացորդ նշաններ կը պա-հէր, և առեւտրական ձեռնարկներու աւելի յարմարութիւններ ունէր։ Մենք տեսանք որ ԺԷ դարու վերջերը և ԺԸ դարու սկիզբ-ները տեղի ունեցած ազգային շփոթներու մէջ՝ Ղալաթիա մեծ նշանակութիւն ունէր, և Ղալաթիոյ եկեղեցին ալ կերպով մը Մայր եկեղեցւոյ մրցակից դիրք կը պահէր։ Քանի շատցաւ Ղալաթիոյ բնակչութիւնը, պարսպապատէն դուրս ելլելով տարածուեցաւ Բերայի կամ Պերայի, այսինքն է Կոստանդ-նուպոլսոյ հանդիպակաց բարձունքներուն վը-րայ, և տեղացի Յոյներէն և Հայերէն աւե-լի՝ այդ կողմերուն կարեւորութիւն տուին Եւրոպական դեսպանութիւններ, և Լատի-նական միաբանութիւններ, իբրեւ Տաճկա-կան կերպարանութիւններէ ազատ արուար-ձան մը։ Այդ պարագան Բերան նախադա-սելի երեւցուց՝ կաթոլիկութեան միտող կամ յարող Հայերուն, և անոնցմէ մաս մը սիրեց այդ կողմերը անցնիլ. բայց անհիմն կ'ըլլար հետեւցնել թէ, Բերայաբնակ Հայութիւնը կաթոլիկ եղած ըլլայ, կամ թէ բոլոր կա-թոլիկամիտներ՝ Բերայաբնակ եղած ըլլան։ Ղալաթիան հայադաւան կեդրոն էր, և Ս. Յարութիւն հիւանդանոցը և Թաքսիմէ ան-դին եղող գերեզմանոցը սկիզբէն իրենն էին, թող որ կաթոլիկամիտ Հայութիւնը որոշ մարմին չէր և որոշ կացութիւն չու-նէր, այլ Հայ պատրիարքութեան հպատակ և Հայ ժողովուրդի կամ հասարակութեան մասն էր, իբր հայադաւան տարրին անդամ, ինչ ալ ըլլար իր հեռացեալ միտքը կամ հեստեալ ընթացքը։ Հայերուն հետզհետէ այդ արուարձանին մէջ շատնալը, և պա-րըսպապատ քաղաքներուն գիշերները դռըն-փակ մնալուն սովորութիւնը, և դուրսի ե-ղողներուն հոգեւորական պէտքերուն պա-հանջը, այդ արուարձանի մէջ ալ եկեղեցի մը ունենալու պէտքը չեշտեցին։ Առաջին անգամ Յոյներ 1804 օգոստոս 15'ին, Կալի-նիկոս Ե պատրիարքին ջանքով եկեղեցի մը հիմնարկեցին, որ է իրենց Ս. Աստուածած-նայ նուիրեալ եկեղեցին Բերայի հին Պա-լըքբազարի շուկային մօտ։ Ասոր վրայ Հա-յերն ալ քաջալերուեցան նոյնն ընել, և 1805'ին, Գրիգոր Մահտեսի-Գէորգեան կամ Զարալեան ամիրա, Ղալաթիոյ Ս. Լուսա-ւորիչ եկեղեցւոյն [illegible], որ է վարիչ իշխանապետ, 6000 կանգուն տարածու-թեամբ բանջարանոց մը գնեց Յոյներուն եկեղեցիէն ոչ շատ հեռու, և տեղը յամ-[illegible], և [illegible], մինչեւ որ յաջողեցաւ փայ-տաշէն եկեղեցի մը կառուցանել գնուած գետնին մէջտեղը, որ 1807 մայիս 31'ին Հո-գեգալստեան նախընթաց ուրբաթ օրը օծ-ուեցաւ Ռումէլիի նուիրակ Աղեքսան արքե-պիսկոպոսի ձեռքով։ Իսկ [illegible], այսինքն Հոգեգալստեան դիմացի կիրակիին, յունիս 9'ին, [illegible], այսինքն առա-ջին պատարագը կը մատուցուի։ Քանի որ յիշատակարանին մէջ այլեւս Աղեքսան ե-պիսկոպոս չյիշուիր, իրէպ է հետեւցնել, թէ [illegible] Յովհաննէս եղած կ'ըլլայ առաջին պատարագը մատուցանողը (ԾՐՐ.1)։ Կ'երեւի թէ պատրաստութիւնները չէին կրցած լրա-

ցընել, որ օծումէ երկու օր առաջ Հոգեգալստեան տօնին առաջին պատարագ չէ մատուցուէր. բայց Հոգեգալուստը եղած է միշտ եկեղեցւոյն տարեդարձի օրը, ինչպէս նոյն տօնին ալ՝ 1907 յունիս 10'ին, կատարուեցաւ եկեղեցւոյն հարիւրամեակի տօնախմբութիւնը։ Փայտաշէն եկեղեցին հազիւ երեք տարի կեանք ունեցաւ և Բերայի մեծ հրդեհին հրով եղեւ [illegible]։ Պէրպէրեան զայն կը դնէ ապրիլ 7'ին (ՊԷՐ.448), յիշատակարանը կը դնէ շաբաթուն յորում Ղազար զարթեաւ, որ կ'իյնայ ապրիլ 9'ին, և կ'երեւի թէ երկու երեք օր տեւած է հրդեհը։ Բայց քանի մը օրուան մէջ հապճեպ կարգի դնելով ազատած քարուկիր մասը, Մեծի ուրբաթուն օրը, այսինքն ապրիլ 15'ին, [illegible], կը գրեն, [illegible] (ՍՐՐ.2), զի կրցած են այնտեղ տօները կատարել։ Այս վիճակը տեւած է, մինչեւ վերաշինութիւնը 1836'ին, հոկառակ վերաշինութեան համար թափուած ջանքերուն։ Այդ միջոցին Բերայի խարխուլ եկեղեցին, Ղալաթիոյ եկեղեցւոյն յարակից նկատուած էր և նոյն եկեղեցպանութեան ձեռքը կը մնար։

**2307**. Յովհաննէսի պատրիարքութեան գլխաւոր հոգածութիւններէն մին ալ Երուսաղէմի եղաւ, որ կարծես թէ երբեք չէ դադարած Կ-Պոլսոյ աթոռը զբաղեցընել, երբեմն արտաքին հակառակութեանց և երբեմն ներքին երկպառակութեանց երեսէն։ Երուսաղէմի գործերը թողած ենք Պետրոս Եւդոկիացի պատրիարքին մահուան, և յաջորդի ընտրութեան երկարելուն պարագային (§ 2181), որ է ըսել 1800 տարւոյ կիսուն Յովհաննէսի առաջին անգամ պատրիարքութեան բարձրացած օրերը (§ 2231)։

**ԹԷՈԴՈՐՈՍ ՊԱՏՐԻԱՐՔ**

Պետրոս կարօտութեան և դրամական նեղութեան պատճառով Յոպպէ եկած էր, և հազիւ քանի մը հազար դահեկան կը մնար աթոռին արկղը, ծանրածանր պարտքերու դիմաց, մինչ եպարքոսը ուժգին կը պնդէր, հազար քսակ դրամ տալ և անմիջապէս ստոյգ լինել բանալին (ԱՍՏ.Բ.134)։ Անհնարին տագնապին մէջ միաբանութիւնը պարտաւորուեցաւ ունեցածէն մերկանալ և ժողովուրդին վրայ ծանրանալ, և հազիւ պահանջուած գումարին կէսը հայթայթել։ Այսպիսի կացութեան մէջ, միաբաններու մէջ պատրիարքութեան բարձրանալու փափաքն իսկ մարած էր, և Կ-Պոլսոյ պատրիարքին դիմեցին, որ ազգովին որեւէ մէկը իրենք նշանակեն միաբաններուն մէջէն, և պաշտօնական պահանջները լրացնելով հաղորդեն. և այս միտքերնին Երուսաղեմայ փոխանորդ Յակոբ եպիսկոպոսին ալ իմացուցին։ Այնչափ էր միաբանութեան յուսահատութիւնը, որ մինչեւ իսկ կը մտածէին բողոքել [illegible] եւ ցրուել (ԱՍՏ.Բ.136)։ Կ-Պոլսոյ մէջ պատրիարքութեան յարմար դատուեցաւ Թէոդորոս Վանեցի եպիսկոպոս, և իրեն ծանուցուեցաւ Երուսաղէմ, բայց նա յանձն չառաւ։ Միաբանութիւնն ալ չկրցաւ պնդել, և Պետրոս ու Կարապետ եպիսկոպոսներն ու Ստեփանոս վարդապետ ձանպայ հանեց Կ-Պոլսեցոց իմացնելու իր ցրուելու խորհուրդը, եթէ [illegible] չըլլան, որ [illegible] (ԱՍՏ.Բ.137)։ Երուսաղէմի մէջ կը շարունակէին դրամ կորզելու համար սպառնալիքներն ու բռնութիւնները. Կ-Պոլսոյ մէջ չէին վերջանար ընտրողական վարանումները, մինչեւ որ 1802 փետրուարին, ազգային ժողովը կրկին կը պնդէ Թէոդորոսի ընտրութիւնը, և այս միտքով ետ կը դարձնէ Երուսաղէմէ եկող պատուիրակները։ Վերջապէս 1802 ապրիլ 10'ին, Աւագհինգշաբթի օրը, Թէոդորոս կը գիջանի առժամեայ կերպով գործերը հոգալ. իսկ յուլիս 11'ին, Վարդավառի նախատօնակին, կրնան գինքը աթոռ ալ նստեցնել (ԱՍՏ.Բ.141), Պետրոսի մահուընէ երկու տարի և ամիս մը ետքը (§ 2181)։ Այսպէս աթոռն իր գահակալն ունեցաւ, բայց տագնապներ չվերթեւցան։ Յոպպէի մէջ ապստամբ Մէհմէտ փաշա չարաչար տանջանքներով քրիստոնեաները կը կողոպտէր, և Հայոց տեսուչ Ղազար վարդապետը կը չարչարէր։ Ճէզար փաշա և օգնականները Իսմայիլ և Սիւլէյման՝ ապստամբը ընկճելու նպատակով ժողովուրդը կը կողոպտէին։ Ապտուլլահ փաշա նոր կուսակալ, նորանոր պահանջներ կը շատցնէր, իսկ Թէոդորոսի Կ-Պոլիս դիմելէ զատ միջոց չէր մնար. բայց հոն ալ Դաւիթ-Դանիէլեան խնդիրներու կը բաղխէր, զի Խամսեցին՝ Դանիէլէն յատուկ

*գիր չառնող նուիրակները կը հալածէր։ Կիլիկիոյ կաթողիկոս Կիրակոսին ալ* (§ 2133), 1803 *տարւոյ Տեառնընդառաջէն Զատիկ՝ Երուսաղէմի մէջ մնալը նորանոր ծախքերու ենթարկեց պատրիարքարանը* (ԱՍՏ.Բ.143), *այնպէս որ ամէն կողմէն տկարացած և նեղուած կը մնար Երուսաղէմի աթոռը, և մօտալուտ յոյսեր ալ չէին տեսնուեր։*

ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԽՆԴԻՐ

**2308**. *Վերահաս տագնապներէն մի մասը հասարակ էր միւս քրիստոնեայ ազգերուն ալ. բայց անոնք իրենց ազգայիններուն՝ Յոյներուն և Լատիններուն օժանդակութեամբ դիրքերնին կրնային պահպանել, մինչ Հայերը արտաքնապէս տագնապի և տուգանքի մատնուած, ներքնապէս ալ Դաւիթի և Դանիէլի խնդիրներով պառակտած, դիրքերնին խախտած և ամէն միջոցէ զրկուած ու յուսահատ վիճակ մը ունէին։ Այդ կացութիւնը համարձակութիւն կու տար Յոյներուն և Լատիններուն, և մանաւանդ առաջիններուն, համարձակ Հայոց իրաւունքները անարգել, մինչև իսկ անոնց պատրիարքարանին տիրանալու ձգտիլ, և Հայերը իսպառ վտարել Սուրբ Տեղեաց մասնակցութենէն։ Մայրաքաղաքին մէջ մեծ էր Յունական ազդեցութիւնը այդ ժամանակին, և իրենց իշխանաւորները կրնային կամակատար գործիքներ դարձնել պետական պաշտօնեաները, քանի որ հնչուն փաստերու տէր էին։ Մեր նպատակը չէ մանրամասնութեանց մտնելով պատմութիւննիս ձապաղել, միայն եղելութեանց ընթացքը կ'ուզենք անցողակի ակնարկել առայժմ։ Այն ատեններ բաւական էր որևէ փաւքուս ամբաստանութեամբ առիթ մը ստեղծել, և դրամական ազդեցութեամբ մեծամեծները շահիլ, որ նորանոր հրամանագիրներ ստացուէին չարունակաբար։ Ըստ այսմ կը յիշուի* 1802'*ին Յոյներէ առնուած հրովարտակ մը, իբր թէ Հայեր ստնձգութիւններ ըրած ըլլան Յոյներու իրաւունքներուն* (ԱՍՏ.Բ.149). *հրովարտակ մըն ալ* 1804'*ին առնուած, որով սուլտանը* Յունաց սեփական է զբովանդակ սուրբ տեղիս (ԱՍՏ.Բ.149), *Հայերուն թողլով միայն ուխտի երթալու ազատութիւն։ Բայց այս հրովարտակներ ծածուկ կը պահուէին, և հազիւ* 1806'*ին, անոնց մասին զրոյցներ սկսան պտտիլ* (ԱՍՏ.Բ.159)։ *Այդ գաղտնապահ յապաղման պատճառ կրնանք նկատել՝ այն բուռն խռովութիւնները, որք Օսմանեան մայրաքաղաքին մէջ կը տիրէին, ապստամբ փաշաներու և ըմբոստ Ենիչէրիներու երեսէն, և գործադրութեանց արգելք կ'ըլլային։ Սելիմ Գ գահընկէց կ'ըլլար* 1807 *մայիսին* (ԺՈՒ.373), *և կը սպանուէր* 1808 *յուլիս* 28'*ին, և սոյն օր գահընկէց կ'ըլլար իրեն յաջորդող Մուստաֆա Դ, և գահ կը բարձրանար Մահմուտ Բ, Մուստաֆա ալ կը սպանուէր նոյեմբեր* 15'*ին* (ՊԷՐ.447)։ *Բայց Յոյներու ձեռք ձգած հրովարտակներուն զրոյցն ալ չլսուած, Հայեր կրցած էին տեղեկութիւններ քաղել, և փոխանորդ Յակոբ եպիսկոպոս ազդարարած էր Երուսաղէմ՝* ունել է պատրաստի զհին և զնորագոյն հրովարտակս (ԱՍՏ.Բ.149)։ *Բայց որովհետև երկու կողմեր իրարու դէմ երեսած չէին, արտաքին ձևով գործակցութիւններ ալ կրնային կազմակերպել։ Այսպէս եղաւ երբ* 1806'*ին երեք ազգեր համաձայնեցան Երուսաղէմը Դամասկոսի կուսակալութենէն զատելու աշխատիլ, և մի մի վարդապետներ որոշելով՝ Կ-Պոլիս պատուիրակ յղեցին* (ԱՍՏ.Բ.158)։ *Բայց այսպիսի պարագաներ ներքին հակառակութիւնները չէին ջնջեր, և ոչ ալ Յոյները իրենց վերջնական դիտումէն ետ կը կասեցնէին, որոնք քիչ ետքը բուռն կերպով մէջտեղ ելան, ինչպէս իրենց կարգին պիտի պատմենք։*

